ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՔՐԵՍՏՈՄԱՏԻԱ

Հատոր 1

Հնագույն ժամանակներից մինչև
Ք. հ. 298 թվականը

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ – 2007

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)
Հ 241

*Կազմողներ՝* ***Պ. Հ. Հովհաննիսյան***
***Ա. Ե. Մովսիսյան***

*Հ 241 Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, հատ. 1: Հնագույն ժամանակներից մինչև Ք. հ. 298 թ. /Կազմողներ՝* ***Պ. Հ. Հովհաննիսյան, Ա. Ե. Մովսիսյան.*** *– Եր.: Երևանի համալս. հրատ., 2007. – 550 էջ:*

*Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիայի սույն առաջին հատորն ընդգրկում է անտիկ հույն և լատին պատմիչների, հին հայ հեղինակների երկասիրություններում, վիմագիր արձանագրություններում և այլաբնույթ գրական հուշարձաններում տեղ գտած հին Հայաստանի քաղաքական, տնտեսական ու մշակութային պատմությանը վերաբերող կարևորագույն վկայությունները:*

*Հասցեագրվում է ուսանողներին, գիտական ու ընթերցող հանրությանը:*

*Հ* $\frac{0503020913}{704(02)07}$ *2007 թ.* ***ԳՄԴ*** *63.3 (2Հ)*

*ISBN 978-5-8084-0847-0*

*© Հովհաննիսյան Պ. Հ., Մովսիսյան Ա. Ե., 2007 թ.*
*© Երևանի համալսարանի հրատարակչություն, 2007 թ.*





*Խմբագրական հանձնաժողով*

***Զավեն Եկավյան, Պետրոս Հովհաննիսյան***
***Արշակ Մադոյան, Պերճ Ստեփանյան***

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԿԱԶՄՈՂՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ........................................................................5

ԲԱԺԻՆ ԱՌԱՋԻՆ

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՈՒՄԸ

Հայկական ավանդությունը հայ ժողովրդի ծագման մասին.................9
Վրացական ավանդությունը հայ ժողովրդի ծագման մասին...............26
Հունական առասպելը հայ ժողովրդի ծագման մասին .........................32
Հերոդոտոսի վկայությունը արմենների մասին ....................................35

ԲԱԺԻՆ ԵՐԿՐՈՐԴ

ՀՆԱԳՈՒՅՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ
ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀՈՒՄ

Աստվածաշունչը Եդեմի և համաշխարհային ջրհեղեղի մասին.............39
Շումերա-աքադական սկզբնաղբյուրները Հայկական
լեռնաշխարհի ցեղերի ու պետական միավորումների մասին .......43
Հնագույն խուռիերեն արձանագրությունը .............................................66
Հին ասուրերեն բնագրերը Ք. ա. XIX-XVIII
դարերի Հայկական լեռնաշխարհի ցեղերի մասին..........................67
Խեթական սեպագիր արձանագրությունները
Հայկական լեռնաշխարհի մասին .......................................................73
Խեթա-լուվիական հիերոգլիֆ արձանագրություն-
ները Հայկական լեռնաշխարհի մասին ...........................................86
Ասորեստանյան սեպագիր աղբյուրները Հայկական
լեռնաշխարհի ցեղերի, ժողովուրդների և պետական
կազմավորումների մասին ..................................................................90
Ասուրական արշավանքները դեպի Հայկական

լեռնաշխարհ ըստ Դիոդորոս Սիկիլիացու ......................................138
Հայ-ասուրական և հայ-մարական հա-
բաբերությունններն ըստ Մովսես Խորենացու.................................141
Վանի թագավորության սեպագիր աղբյուրները
Հայկական լեռնաշխարհի և հարևան պետու-
թյունների մասին......................................................................150
Ք. ա. I հազարամյակի բաբելոնյան սկզբնաղբյուրները
Հայկական լեռնաշխարհի մասին.......................................................190
Աստվածաշունչը Հայաստանի մասին
(Ք. ա. VII-VI դարեր) ..........................................................................198

## ԲԱԺԻՆ ԵՐՐՈՐԴ

## ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Ք. ա. VII-VI դարերի Հայաստանի պատմության
դրվագներն ըստ Մովսես Խորենացու .................................... .....203
Հայ-մարական փոխհարաբերությունները
Ք. ա. VI դարում ըստ Քսենոփոնի ...................................................206
Տիգրան Երվանդյանի պայքարը Մարաստանի
դեմ ըստ Մովսես Խորենացու.............................................................232
Աքեմենյան Պարսկաստանի դեմ հայ ժողովրդի
պայքարի արտացոլումը Բեհիստունյան
արձանագրության մեջ ........................................................................236
Հերոդոտոսի վկայությունները Հայաստանի մասին............................241
Հայաստանը ըստ Քսենոփոնի նկարագրության .................................243
Սատրապական Հայաստանը (Ք. ա. V դ. վերջ)
ըստ Դիոդորոս Սիկիլիացու .................................................................255
Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքները
և Հայաստանը ..........................................................................................259
Հայաստանը Ալեքսանդր Մակեդոնացու հաջորդ-
ների օրոք ըստ Դիոդորոս Սիկիլիացու .....................................................263
Աղջակալեի երկլեզվյան արձանագրությունը

Արմենիայի սատրապի մասին ........................................................266

## ԲԱԺԻՆ ՉՈՐՐՈՐԴ

## ԱՐՏԱՇԵՍՅԱՆՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Դիոդորոս Սիկիլիացին Արտաշես I-ի
թագավորության մասին........................................................267
Արտաշես I-ի պայքարը Երվանդ Վերջինի
դեմ և Արտաշեսյան հարստության հաստատվե-
լը Հայաստանում ըստ Մովսես Խորենացու........................................269
Պոլիբիոսի վկայությունները Հայաստանի մասին ................................276
Ստրաբոնը Հայաստանի բնաշխարհի և
վարչական բաժանումների մասին................................................279
Պլինիոս Ավագը Հայաստանի բնաշ-
խարհի մասին ........................................................................287
Փոքր Հայքը ըստ Ստրաբոնի նկարագրության .................................... 292
Պլուտարքոսը Արտաշատ մայրաքաղաքի
հիմնադրման մասին ................................................................293
Մովսես Խորենացին Արտաշեսյան սահ-
մանաքարերի մասին ................................................................296
Արտաշես I-ի արամեերեն արձանագրությունները................................296
Հայ-սելևկյան պատերազմի (Ք. ա. 165 Թ.)
ըստ Պորփյուրի և Հիերոնիմոսի ......................................................299
Հայկական զորավարություններն Արտաշես I-ի
ժամանակ ըստ Մովսես Խորենացու ................................................301
Լեոնտի Մրովելին Արտաշես I-ի հյուսիսային
արշավանքների մասին ..............................................................302
Հայոց Արտավազդ I թագավորի հիշատակու-
թյունը Պոմպեոս Տրոգոսի մոտ......................................................310
Հայաստանի քաղաքական վիճակը Ք. ա.
II-I դարերում ըստ Ստրաբոնի ......................................................312
Պոմպեոս Տրոգոսը Ք. ա. 93 Թվականի
հայ-պոնտական դաշինքի մասին ....................................................315

Տիգրան Մեծը Սելևկյան Ասորիքի
թագավոր ըստ Պոմպեոս Տրոգոսի ....................................................317
Ուշբաբելոնյան սեպագրական ժամանակա-
գրության մի վկայություն Տիգրան Մեծի մասին.............................318
Հովսեպոս Փլավիոսը Տիգրան Մեծի կողմից
Սելևկյան Ասորիքի նվաճման մասին ......................................................319
Պլուտարքոսը Ք. ա. 69-67 թվականների
Հայ-Հռոմեական պատերազմի մասին ............................................ 323
Հայ-Հռոմեական պատերազմը ըստ Ապպիանոսի.................................345
Մեմնոնը Հայ-Հռոմեական պատերազմի մասին ....................................352
Տիգրան Մեծի հաշտությունը Պոմպեոսի
հետ ըստ Պլուտարքոսի .........................................................................355
Մարկոս Տուլիոս Կիկերոնը (Ցիցերոն)
Տիգրան Մեծի մասին ...............................................................................358
Կրասսոսի Պարթևական արշավանքը
և Հայաստանը ըստ Պլուտարքոսի .....................................................361
Դիոն Կասսիոսը Ք. ա. 69-66 թվականների
Հայ-Հռոմեական պատերազմի մասին ...................................................366
Անտոնիոսի Հայկական արշավանքն
ըստ Հովսեպոս Փլավիոսի ........................................................................378
Անտոնիոսի Արևելյան արշավանքը
և Հայաստանը ըստ Պլուտարքոսի ........................................................379
Կրասսոսի և Անտոնիոսի Արևելյան արշա-
վանքներն ու Հայաստանը ըստ Դիոն Կասսիոսի ...............................385
Խորենացին Տիգրան Միջինի (Երկրորդ) և Ար-
տավազդ Երկրորդի գործունեության մասին....................................391
Արտաշեսյան հարստության անկումն
ըստ Դիոն Կասսիոսի ...............................................................................399
«Անկյուրայի կոթողը» Արտաշեսյան հարստության
վերջին ներկայացուցիչների մասին .....................................................402
Տիգրան V -ը և Տիգրան VI -ը Մեծ Հայքի
թագավորներ ըստ Հովսեպոս Փլավիոսի ..........................................404
Վոնոն Արշակունին Մեծ Հայքի թագավոր
ըստ Հովսեպոս Փլավիոսի ........................................................................405

Պարթեա-հռոմեական հակամարտությունները
Հայաստանում (Ք. հ. I դարի սկզբներին) ըստ
Գայոս Կոռնելիոս Տակիտոսի ........................................................406
Վրացական արքայական տան հավակնու-
թյունը Մեծ Հայքի գահի նկատմամբ ըստ Գա-
յոս Կոռնելիոս Տակիտոսի..............................................................412

## ԲԱԺԻՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Կորբուլոնի բանակի արշավանքը Հայաստան
ըստ Գայոս Կոռնելիոս Տակիտոսի.....................................................423
Կորբուլոնի բանակի արշավանքը դեպի Տիգ-
րանակերտ և նահանջը ըստ Գայոս Կոռնելիոս Տակիտոսի...........428
Գայոս Կոռնելիոս Տակիտոսը հռոմեական զոր-
քերի պարտության և Հռանդեայի դաշնագրի մասին.....................434
Տրդատ I Արշակունու գահակալումը Հա-
յաստանում ըստ Դիոն Կասսիոսի.......................................................440
Հայկական նախարարական տների ձևա-
վորումն ըստ Մովսես Խորենացու.......................................................449
Գառնիի հունարեն արձանագրությունը..................................................459
Ապարանի հունարեն արձանագրությունը...............................................462
Ք. ա. 72-74 թվականների ալանների արշա-
վանքը դեպի Հայաստան ըստ Հովսեպոս Փլավիոսի......................464
Հայաստանի քաղաքային վիճակը II դարում և
III դարի սկզբներին ըստ Դիոն Կասսիոսի........................................465
Սասանյան հեղաշրջումը Պարսկաստանում և
Հայաստանը ըստ Ագաթանգեղոսի .......................................................473
Հայ-սասանյան հարաբերությունները ըստ
Մովսես Խորենացու ..........................................................................477
«Քարթլիս ցխովրեբան» հայ-սասանյան հարա-
բերությունների մասին (III դարի երկրորդ քառորդ)....................483

Պարսկա-հռոմեական հարաբերությունները III դարի
կեսերին և Հայաստանը ըստ Զոնարասի ........................................488
Հայոց Արտավազդ V թագավորի նամակը
Շապուհ I-ին ըստ Տրեբելլիոս Պոլիոնի ............................................489

## ԲԱԺԻՆ ՎԵՑԵՐՈՐԴ

## ՀԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ

Գողթան երգերը Մովսես Խորենացու հաղորդմամբ ............................491
Խորենացին Արտաշես I-ի ժամանակ արհեստ-
ների և գիտության զարգացման մասին ............................................496
Ստրաբոնը Անահիտ դիցուհու պաշտամունքի մասին............................497
Անահիտ դիցուհու պաշտամունքը Հայաստա-
նում ըստ Պլինիոս Ավագի.............................................................................499
Ագաթանգեղոսը Անահիտի պաշտամունքի մասին.................................499
Մովսես Խորենացին հայկական դիցարանի հել-
լենականացման մասին..................................................................................501
Քաղաքաշինությունը Հայաստանում Երվանդ Վեր-
ջինի օրոք ըստ Մովսես Խորենացու ....................................................504
Մովսես Խորենացին պատմագիր Ողյումպ
քուրմի մասին .............................................................................................507
Մովսես Խորենացին բանաստեղծ Վրույրի մասին ..................................507
Փիլարտոսը հայկական գրերով մանյակի մասին ..................................508
Մովսես Խորենացին Անիի հայկական հեթա-
նոսական արխիվի մասին ..........................................................................509
Հիպպոլիտոս պատմիչը հայերի դպրություն
ունենալու մասին ..........................................................................................510
Ագաթանգեղոսը Հայաստանում գիտության և
ուսման մեհյանի առկայության մասին...........................................511
Գևորգ Ասորի եպիսկոպոսը հայոց գրերի մասին ..................................511
ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ..............................513
ՑԱՆԿԵՐ .......................................................................................................... 517

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Կազմողների կողմից* ........................................................................................5

**Բաժին առաջին**

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՎԱՂ ԱՎԱՏԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

### Մեծ Հայքի աշխարհագրական նկարագիրը. նախարարական տներն ու ռազմական ուժերը

*Մեծ Հայքի աշխարհագրական նկարագիրն ըստ Կլավդիոս Պտղոմեոսի* .......9
*Մեծ Հայքի նկարագրությունն ըստ «Աշխարհացոյց»-ի* .................................14
*Նախարարական տները վաղ ավատատիրական Հայաստանում ըստ Գահնամակի* .......................................................................................23
*Արշակունյաց Հայաստանի զինված ուժերն ըստ Զորանամակի* ..................26

### Քաղաքական իրադրությունը Մեծ Հայքում III դարի վերջերին և IV դարի սկզբներին

*Տրդատ III Մեծի գահակալությունն ըստ Ագաթանգեղոսի* ...........................29
*Սեքստոս Ռուփոսը Մծբինի 40-ամյա խաղաղության պայմանագրի մասին* .......................................................................................................31
*Պետրոս Պատրիկիոսը Մծբինի հաշտության պայմանագրի մասին* .............32
*Տրդատ III-ի գահակալությունն ըստ Մովսես Խորենացու* ............................34

### Քրիստոնեության մուտքը Հայաստան

*Ագաթանգեղոսը Գրիգոր Լուսավորչի բանտարկության մասին* ...................35
*Ագաթանգեղոսը Հռիփսիմյան կույսերի նահատակության մասին* ...............36
*Ագաթանգեղոսը Տրդատ III-ի քրիստոնեություն ընդունելու մասին* ...........38
*Ագաթանգեղոսը Հայաստանում քրիստոնեությունը պաշտոնական կրոն հռչակելու մասին* ..........................................................................40
*Քրիստոնյաների և հեթանոսների միջև տեղի ունեցող կռիվներն ըստ Զենոբ Գլակի* ....................................................................................44

*Պատերազմը քրիստոնյա Հայաստանի և հեթանոս Հռոմի միջև ըստ Եվսեբիոս Կեսարացու*......50
*Եթովպական ընագիրը Հայոց Տրդատ թագավորի մասին*......50
*Ս. Երրորդաբանության հավատամքն արտացոլող հայկական տապանաքար Հռոմից*......60

**Պայքար կենտրոնացված պետության պահպանման համար**

*Միջավատական պայքարի սրումը Խոսրով III-ի օրոք ըստ Փավստոս Բուզանդի*......61
*Փավստոս Բուզանդը մասքութների արշավանքի մասին*......63
*Մասքութների արշավանքն ըստ Մովսես Խորենացու*......65
*Փավստոսը Խոսրովակերտ անտառը տնկելու մասին*......66
*Փավստոսը Տիրան թագավորի գահակալության մասին*......66
*Հայ-պարսկական պատերազմները Տիրան թագավորի ժամանակ ըստ Փավստոսի*......68
*Արշակ II-ի ջանքերը պետության ամրապնդման ուղղությամբ ըստ Փավստոսի*......73
*Աշտիշատի ժողովի որոշումներն ըստ Փավստոս Բուզանդի*......75
*Մովսես Խորենացին Ներսես կաթողիկոսի ձեռնարկումների մասին*......78
*Արշակավանի հիմնադրումն ու կործանումն ըստ Փավստոսի*......79
*Մովսես Խորենացին Արշակավանի իրադարձությունների մասին*......82
*Հայ-պարսկական պատերազմները Արշակ II-ի օրոք ըստ Փավստոս Բուզանդի*......83
*Ամմիանոս Մարկելլինոսը Կոստանդիոս կայսեր և Արշակ II-ի միջև տեղի ունեցած բանակցությունների մասին*......86
*Ամմիանոսը 363 թվականի «Ամոթալի» պայմանագրի մասին*......88
*Փավստոս Բուզանդը հայ-պարսկական բանակցությունների և Արշակ II-ի բանտարկության մասին*......89
*Ամմիանոսն Արշակ II-ի սպանության մասին*......93
*Արշակ II-ի սպանությունն ըստ Փավստոսի*......94
*Պրոկոպիոս Կեսարացին Արշակ II-ի սպանության մասին*......96
*Փավստոս Բուզանդը Արտագերսի պաշտպանության մասին*......100
*Ամմիանոսն Արտագերսի պաշտպանության մասին*......103
*Մովսես Խորենացին Ձիրավի ճակատամարտի մասին*......105
*Փավստոս Բուզանդը Պապ Արշակունու ներքին և արտաքին քաղաքականության մասին*......108

*Ամմիանոսը Պապ թագավորի սպանության մասին* ......................................113
*Պապ թագավորի սպանությունն ըստ Փավստոս Բուզանդի*........................114
*Փավստոսը Վարազդատի գահակալության մասին*.......................................116
*Գահակալական պայքարը Մանուելի խնամակալության տարիներին ըստ Փավստոսի* ...........................................................................................122
*Արշակ III-ի գահակալությունն ըստ Փավստոսի* ...........................................125
*Փավստոս Բուզանդը Հայաստանի առաջին բաժանման մասին* ..................127
*Ղազար Փարպեցին Հայաստանի առաջին բաժանման մասին* ....................129
*Մովսես Խորենացին Արշակունիների թագավորության անկման մասին* .......................................................................................................131
*Ղազար Փարպեցին Արշակունիների թագավորության անկման մասին* .......................................................................................................133
*Մովսես Խորենացին Արշակունիների թագավորության անկման պատճառների մասին* .............................................................................136

**Բաժին երկրորդ**

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍԱՍԱՆՅԱՆ ԻՐԱՆԻ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ
*(V–VII դարեր)*

### *I. Հայաստանի վարչատնտեսական, քաղաքական ու իրավական կացությունը*

*Եղիշեն Արշակունիների թագավորության անկմանը հաջորդող իրադարձությունների մասին*.....................................................................140
*Ղազար Փարպեցին Արևելյան Հայաստանում մարզպանական վարչաձևի հաստատման մասին* ...............................................................142
*Հուստինիանոս I կայսեր հրովարտակը Բյուզանդական Հայաստանի ռազմական վերակառուցման մասին*.........................................................143
*Հուստինիանոս I կայսեր էդիկտը հայոց ժառանգական իրավունքի մասին* .......................................................................................................144
*Հուստինիանոս I կայսեր 21-րդ նովելլան՝ հայոց ժառանգական իրավունքի մասին* ...............................................................................145
*Հուստինիանոս I կայսեր 31-րդ նովելլան՝ Հայաստանի վարչական բարենորոգումների վերաբերյալ* ...................................................................147

*Հուստինիանոս I կայսեր վարչաքաղաքական միջոցառումները Բյուզանդական Հայաստանում ըստ Պրոկոպիոս Կեսարացու*................151
*Պարսկա-բյուզանդական 20-ամյա պատերազմը (571-591 թթ.) և Հայաստանի երկրորդ բաժանումն ըստ Սեբեոսի*....................................160
*Սեբեոսը Մորիկ կայսեր հայահալած քաղաքականության մասին*..............168
*Հայաստանի կացությունը արաբական արշավանքների նախօրյակին ըստ Սեբեոսի*.........................................................................171
*Բյուզանդական կայսրության դավանաբանական քաղաքականությունը ըստ Սեբեոսի*.........................................................................177
*«Narratio de rebus Arméniae» երկասիրությունը հայ-բյուզանդական եկեղեցական անջատման մասին*.................................................179
*Ուխտանեսը հայերի և վրացիների եկեղեցական բաժանման մասին*.........186

## *II. V–VI դարերի հայոց ազատամարտը*

*Վարդանանց պատերազմը ըստ Եղիշեի*..........................................................195
*Ղազար Փարպեցին Վարդանանց պատերազմի մասին*................................230
*Վարդանանց պատերազմը ըստ Սեբեոսի*........................................................259
*Մովսես Կաղանկատվացին Վարդանանց պատերազմի մասին*...................261
*Թովմա Արծրունին 450-451 թթ. իրադարձությունների մասին*...................265
*Ղազար Փարպեցին Վահանանց պատերազմի մասին*..................................267
*481-484 թթ. հակապարսկական ապստամբությունը Հայաստանում ըստ Սեբեոսի*.........................................................................297
*Պրոկոպիոս Կեսարացին հայերի հակաբյուզանդական ապստամբությունների մասին*.....................................................................299
*Բյուզանդահայ ռազմաքաղաքական գործիչների դավադրությունն ընդդեմ Հուստինիանոս I-ի ըստ Պրոկոպիոս Կեսարացու*......................302
*571-572 թթ. ապստամբությունը Սասանյան Պարսկաստանի դեմ ըստ Սեբեոսի*.........................................................................307
*Հովհան Եփեսացին 571-572 թթ. հայերի հակապարսկական ապստամբության մասին*..........................................................................309
*Հովհաննես Դրասխանակերտցին 571-572 թթ. ապստամբական շարժումների մասին*..........................................................................316
*Ստեփանոս Ասողիկը 571-572 թթ. հակապարսկական ապստամբության մասին*..........................................................................317
*VII դարի հայ ազատագրական կռիվներն ըստ «Տարոնի պատերազմը» վիպասքի*..........................................................................319

**Բաժին երրորդ**

## *ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ*
## *(VII–IX դարեր)*

### *I. Արաբական արշավանքները Հայաստան և երկրի նվաճումը*

*Սեբեոսը արաբական առաջին արշավանքների և Հայաստանի կացության մասին*....................341
*Հովհան Մամիկոնյանն արաբական առաջին արշավանքի մասին*....................345
*Ղևոնդն արաբական առաջին արշավանքների մասին*....................346
*Արաբական առաջին արշավանքը Հայաստան ըստ Ասողիկի*....................350
*Սեբեոսը 652 թվականի հայ-արաբական պայմանագրի մասին*....................351
*Թեոփանես Խոստովանողը 652 թ. հայ-արաբական պայմանագրի մասին*....................352
*Արաբա-բյուզանդական պատերազմները և Հայաստանն ըստ Սեբեոսի*....................353
*Բալազուրին Հայաստանի նվաճման մասին*....................357
*Արաբական տիրապետության հաստատումը Հայաստանում ըստ Ղևոնդի*....................362
*Խալիֆա իբն Խայյաթը «Կրակի տարվա» (705 թ.) իրադարձությունների մասին*....................370
*Յակուբին «Կրակի տարվա» իրադարձությունների մասին*....................371
*Մովսես Կաղանկատվացին 705 թ. դեպքերի մասին*....................373
*Հայաստանը արաբական տիրապետության ներքո ըստ Իբն ալ-Ֆակիհի*....................373
*Աբու Մուհամմադ իբն Ասիմ ալ-Քուֆֆիի վկայությունները արաբական արշավանքների և Հայաստանի նվաճման մասին*....................375

### *II. Հայ ժողովրդի իրավատնտեսական կացությունը արաբական տիրապետության շրջանում*

*Ղևոնդը հերթի աշխարհագրի մասին*....................382
*Մովսես Կաղանկատվացին հերթի աշխարհագրի մասին*....................382
*Ղևոնդն արաբների հարկային քաղաքականության և հայ ժողովրդի տնտեսական ծանր վիճակի մասին*....................383

*Աբու Յուսուֆն արաբների հարկային քաղաքականության մասին ............386*
*Հայաստանի բնահարկը արաբական ժամանակաշրջանում*
*(VIII դարի կես) ըստ Ջահշիարի ..................................................................389*
*Սամուել Անեցին արաբների հարկային քաղաքականության մասին.........390*

### *III. Հայ ժողովրդի ազատագրական պայքարն ընդդեմ արաբական տիրապետության (VIII–IX դարեր)*

*Ղևոնդ Պատմագիրը 703 թ. հակաարաբական ելույթների մասին .............391*
*748–750 թթ. ազատագրական պատերազմներն ըստ Ղևոնդի ....................394*
*762 թ. ազատագրական կռիվները Վասպուրականում ըստ Ղևոնդի .........396*
*Ղևոնդ Պատմագիրը 774–775 թթ. հակաարաբական Մեծ*
*ապստամբության մասին ................................................................................397*
*Բալազուրին հայերի 850–855 թթ. հակաարաբական*
*ապստամբության մասին ................................................................................404*
*850–855 թթ. ապստամբական շարժումներն ըստ Յակուբի .........................406*
*Թովմա Արծրունին 850–855 թթ. հակաարաբական*
*ապստամբության մասին ................................................................................408*
*Հովհաննես Դրասխանակերտցին 850–855 թթ. հակաարաբական*
*ապստամբության մասին ................................................................................427*
*850–855 թթ. հակաարաբական ապստամբությունն ըստ*
*Ստեփանոս Ասողիկի.......................................................................................430*
*Իբն ալ-Ասիրը 850–855 թթ. հակաարաբական ապստամբության*
*մասին ...........................................................................................................432*

**Բաժին չորրորդ**

## ԱՂԱՆԴԱՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ
### *(IV–IX դարեր)*

*Կ. Պոլսի Ատտիկոս պատրիարքի Թուղթը Հայոց Սահակ Ա Պարթև*
*կաթողիկոսին բորբորիտների աղանդի մասին .......................................437*
*Մովսես Խորենացին բորբորիտների աղանդը հալածելու մասին................438*
*Կորյունը բորբորիտների շարժման մասին.....................................................438*
*Մեսրոպ Մաշտոցի ձեռնարկումներն ընդդեմ աղանդավորների ըստ*
*Մովսես Խորենացու ........................................................................................439*
*Շահապիվանի եկեղեցական ժողովի կանոնները մծղնեության դեմ .........440*

*Եզնիկ Կողբացին ընդդեմ Մարկիոնի .......................................................443*
*Մովսես Կաղանկատվացին աղանդավորական ու հերձվածողական*
*չարժումների դեմ պայքարի անհրաժեշտության մասին ........................451*
*Աղվանից եկեղեցական ժողովի կանոնները աղանդավորական*
*չարժումների մասին ...............................................................454*
*Հովհան Օձնեցու կանոնները մծղնեության դեմ ......................................456*
*Հովհան Օձնեցին պավլիկյան չարժման մասին ......................................456*
*Գրիգոր Մագիստրոսը պավլիկյան չարժման մասին ....................................467*
***Բյուզանդական սկզբնաղբյուրները պավլիկյան չարժման մասին***
*1. Թեոփանես Խոստովանող .........................................................468*
*2. Նիկեփոր պատրիարք .............................................................471*
*3. Իգնատիոս սարկավագ ............................................................473*
*4. Սուրբ Մակարիոսի «Վարք»-ը ....................................................474*
*5. Պետրոս Սիկիլիացի ..............................................................475*
*6. Ամորիոնի 42 նահատակների վարքը .............................................504*
*7. Հովսեփ Գենեսիոս ...............................................................506*
*8. Կոստանդին VII Ծիրանածին ....................................................511*
*9. Թեոփանեսի Շարունակող ........................................................512*
*10. «Վասիլ Դիգենիս Ակրիտաս» ...................................................520*
*11. Աննա Կոմնենա .................................................................524*

**Բաժին հինգերորդ**

## *ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ*
## *(IV-IX դարեր)*

*Կորյունը Հայոց գրերի գյուտի մասին ...............................................529*
*Մովսես Խորենացին Հայոց գրերի գյուտի մասին ...................................540*
*Հայոց գրերի գյուտն ըստ Ղազար Փարպեցու ........................................547*
*Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի ձեռնարկած միջոցառումները*
*հայագիր դպրոց ու մատենագրություն կազմակերպելու*
*ուղղությամբ .......................................................................552*
*Մովսես Խորենացին հայագիր դպրոցի ու մատենագրության*
*կազմակերպման մասին ............................................................555*
*Մովսես Կաղանկատվացին աղվանից այբուբենի ստեղծման մասին ..........558*
*Փավստոս Բուզանդն իր Պատմության կառուցվածքի մասին ......................558*
*Ղազար Փարպեցին նախընթաց հայ պատմագրերի մասին .........................559*

*Սահակ Բագրատունին Մովսես Խորենացու «Հայոց պատմության» պատվիրատու և հովանավոր* ....... *564*
*Թովմա Արծրունին Մովսես Խորենացու Պատմության չորրորդ գրքի մասին* ....... *567*
*Ջրադաշտականության մերժման փիլիսոփայական հիմնավորումն ըստ Եզնիկ Կողբացու* ....... *568*
*Եզնիկ Կողբացու խրատները* ....... *575*
*Հովհան Մանդակունին թատերախաղերի մասին* ....... *579*
*Սեբեոսն իր Պատմության բովանդակության մասին* ....... *584*
*Սեբեոսը Ս. Հռիփսիմե տաճարի կառուցման մասին* ....... *585*
*Զվարթնոցի (Ս. Գրիգոր Լուսավորիչ) եկեղեցու կառուցումն ըստ Սեբեոսի* ....... *586*
*Անանիա Շիրակացին իր ուսումնառության մասին* ....... *588*
*Անանիա Շիրակացու թվաբանական խնդիրները* ....... *593*
*Անանիա Շիրակացու տիեզերագիտական հայացքները* ....... *601*

## *V-VIII դարերի հայ գեղարվեստական գրականությունը*

*ա.* ***Արձակ. ընտիր հատվածներ***

*Եղիշե, Հայոց աշխարհի փափկասուն տիկինները* ....... *606*
*Ղազար Փարպեցի, Երանելի գավառն Այրարատյան* ....... *607*
*Դավիթ Անհաղթը փիլիսոփայության մասին* ....... *609*
*Սմբատ Բագրատունու գաղանամարտն ըստ Սեբեոսի* ....... *612*

*բ.* ***Քնարերգություն. ընտիր քերթվածներ***

*Սահակ Պարթև* ....... *613*
*Մեսրոպ Մաշտոց* ....... *614*
*Մովսես Խորենացի* ....... *614*
*Հովհան Մանդակունի* ....... *616*
*Կոմիտաս* ....... *617*
*Սահակ Ձորոփորեցի* ....... *618*
*Խոսրովիդուխտ Գողթնացի* ....... *618*
*Սահակադուխտ Սյունեցի* ....... *619*
*Դավթակ Քերթող* ....... *620*

*Ժամանակագրություն Արշակունի թագավորների, Հայոց մարզպանների, իշխանների և կաթողիկոսների* ......623

***Ցանկեր***

*Անձնանունների* ......629
*Ցեղերի, տոհմերի, ժողովուրդների, աղանդավորական և այլ խմբերի* ......652
*Տեղանունների* ......657
*Պատկերների* ......676

## ԿԱԶՄՈՂՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

1981 Թ. Երևանի պետական համալսարանը լույս ընծայեց Պ. Հ. Հովհաննիսյանի և Ա. Գ. Աբրահամյանի կազմած «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիայի» առաջին հատորը (հնագույն ժամանակներից մինչև IX դարի կեսերը, 944 էջ)։ Ծրագրի համաձայն քրեստոմատիան պետք է լիներ քառահատոր հրատարակություն։ Յուրաքանչյուր հատոր նվիրված էր լինելու որոշակի պատմաշրջանի՝ հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը։

Լույս տեսած հատորում ժամանակագրական հերթականությամբ ամփոփված էին հայ և օտար պատմիչների երկերում, վիմագիր արձանագրություններում տեղ գտած հին և վաղ միջնադարյան Հայաստանի պատմությանը վերաբերող հիմնական սկզբնաղբյուրային վկայությունները։

Քրեստոմատիայի առաջին հատորն ունեցավ դրական լայն արձագանք։ Հայաստանում և Սփյուռքում լույս տեսած գրախոսականներում հույս էր հայտնվում, որ աշխատանքը կանգ չի առնի և քրեստոմատիայի նախատեսված 2–4-րդ հատորները ժամանակին կդրվեն ընթերցողի սեղանին։ Քրեստոմատիայի ծայրահեղ անհրաժեշտությունը զգալի էր հատկապես դպրոցական և բուհական ուսումնական համակարգերում, ինչու չէ, նաև գիտահետազոտական աշխատանքների բնագավառում։ Սակայն, հանգամանքների բերումով, հետագա հատորներն այդպես էլ լույս չտեսան։ Երևանի պետական համալսարանի Հայ ժողովրդի պատմության ամբիոնի փորձերը քրեստոմատիայի մնացյալ հատորները պատրաստելու և դրանք հրատարակելու ուղղությամբ որևէ դրական արդյունքի չհանգեցին։

Գիտական ու ընթերցող լայն հանրության, ուսանողության և աշակերտության համար այնքան կարևոր այս հրատարակությունը կյանքի կոչելուն նախաձեռնողը եղավ Լիսաբոնի Գալուստ Կյուլպենկյան հիմնարկության Հայկական բաժանմունքի տնօրեն,

դոկտոր **Ջավեն Եկավյանը:** Նրա սիրալիր առաջարկությամբ ու օժանդակությամբ ծրագրվեց իրականացնելու «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիայի» նոր հրատարակությունը:

Նախատեսված է այս նոր քրեստոմատիան հրատարակել վեց հատորով: Առաջին հատորն ընդգրկելու է հնագույն ժամանակներից մինչև Ք. հ. 298 թվականը, 2-րդը՝ 298 թվականից մինչև 885 թվականը, 3-րդը՝ 885 թվականից մինչև XVII դարի կեսը, 4-րդը՝ XVII դարի կեսից մինչև XIX դարի կեսը, 5-րդը՝ XIX դարի կեսից մինչև 1920 թվականը, 6-րդը՝ 1920 թվականից մինչև մեր օրերը:

Ինչպես նշվեց, քրեստոմատիայի առաջին հատորը ժամանակագրական առումով ընդգրկում է հնագույն ժամանակներից մինչ 298 թվականը: Այս հատորում նյութերն ընտրված և դասավորված են այնպես, որ ընթերցողը որոշակի պատկերացում կազմի հայ ժողովրդի կազմավորման ընթացքի, Հայկական լեռնաշխարհի հնագույն ցեղերի ու ժողովուրդների, հայկական պետականության ձևավորման ու զարգացման, մեր ժողովրդի ներքին կյանքի, գրաղմունքի, կենցաղի, հավատալիքների, մշակույթի և այլ հարցերի մասին:

Հայկական լեռնաշխարհի հնագույն հասարակությունների վերաբերյալ ամբողջ նյութը քաղված է շումերա-աքադական, հնագույն խուռիական, խեթական, խեթա-լուվիական, ասորեստանյան և Վանի թագավորության արձանագրություններից: Դրանց զգալի մասը տեղ չի գտել նախորդ քրեստոմատիայում և հայերենով լույս է տեսնում առաջին անգամ: Առավել լայնորեն են ներկայացված նաև հունահռոմեական սկզբնաղբյուրների նյութերը: Քրեստոմատիայում օգտագործվել են ինչպես անտիկ հեղինակների երկերի արդեն գոյություն ունեցող թարգմանությունները՝ հատկապես «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարով լույս տեսած հրատարակությունները, այնպես էլ նոր՝ հատուկ քրեստոմատիայի համար կատարված թարգմանությունները: Հայկական սկզբնաղբյուրներից ներկայացվող նյութերը տրվում են աշխարհաբար թարգմանությամբ:

Քրեստոմատիայում ընդգրկված սկզբնաղբյուրային բնագրերին կցված են սեղմ ներածականներ, որտեղ տրվում են հեղինակների մասին ընդհանուր, քրեստոմատիկ բնույթի տեղեկություններ, որոշ դեպքերում էլ՝ երկերի սեղմ բնութագիրը: Նշվում է նաև տվյալ բնագրի թարգմանչի անունը և այն հրատարակությունը, որից կատարված է թարգմանությունը: Նյութերում հանդիպող վիճելի, անհասկանալի և բացատրությունների կարոտ տեղերը ծանոթագրվում

են բնագրից անմիջապես հետո: Ծանոթագրությունները տրվում են գիտության մեջ առավել ճանաչում ստացած տեսակետներին համապատասխան: Հատորի վերջում զետեղված է անձնանունների, տեղանունների և դիցանունների ցանկ:

Հատորի առաջին, երրորդ, չորրորդ, հինգերորդ և վեցերորդ բաժինները կազմել, ծանոթագրել և հրատարակության է պատրաստել **Պ. Հ. Հովհաննիսյանը**, երկրորդ բաժինը՝ **Ա. Ե. Մովսիսյանը**: Երկրորդ բաժնում օգտագործվել են նաև Վ. Ն. Խաչատրյանի (խեթական արձանագրություններ) և Հ. Հ. Կարագյոզյանի (ուրարտական արձանագրություններ)՝ նախորդ քրեստոմատիայի համար պատրաստած տեքստերը:

Վերջին տասնամյակներում բուռն վեճեր ծավալվեցին Վանի (Բիաինիլի, Ուրարտու, Արարատ) թագավորության էթնիկ բնույթի հարցի շուրջ, որոնց ընթացքում բանավիճող կողմերը չհիմնավորված հակադրության մեջ դրեցին «Ուրարտու», «Արարատ» և «Հայաստան» տերմինները: Այս հատորում Վանի հայկական թագավորության համար հավասարապես կօգտագործվի «Ուրարտու» երկրանունը, քանի որ երկիրն այդպես էր կոչվում ասուրա-բաբելոնյան աղբյուրներում: «Ուրարտու» և «ուրարտական» տերմիններն ունեն ժամանակագրական և ոչ թե էթնիկ իմաստ: Իսկ «ուրարտերեն» տերմինը կգործածվի Վանի թագավորության սեպագիր բնագրերի լեզուն նշելու համար:

Քրեստոմատիան նպատակ չունի և, բնականաբար, չի էլ կարող ընդգրկել այն ամենը, ինչ պարունակում է սեպագրական ավանդույթը, անտիկ և վաղ միջնադարյան պատմագիտական ու աշխարհագրական միտքը հայերի ու Հայաստանի մասին: Կազմողները հիանալի են պատկերացնում, որ բազմալեզու և տարաբնույթ նման մի հրատարակություն, որի նյութերը թարգմանված են այլազան թարգմանիչների կողմից, չի կարող ակնկալել կատարյալ միօրինակություն, զերծ չլինել առանձին բացթողումներից: Հետևաբար կազմողները սիրահոժար կընդունեն ընթերցողների դիտողություններն ու ցանկությունները, որոնք հաշվի կառնվեն քրեստոմատիայի հաջորդ հատորները հրատարակության պատրաստելիս:





*Արծաթյա գավաթ Քարաշամբից*
*(Ք. ա. XXI դար)*



### ԲԱԺԻՆ ԱՌԱՋԻՆ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՈՒՄԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

*Հայ ժողովրդի ծագման ու նրա կազմավորման ընթացքի մասին գոյություն ունեն հայրենի և օտար առասպելական մի քանի ավանդություններ: Հայկական ավանդությունը մեզ է հասել հիմնականում Մովսես Խորենացու «Հայոց պատմության» էջերում:*

*Մովսես Խորենացին միջնադարյան հայ պատմագրության ամենակարկառուն դեմքն է, որը ըստ արժանվույն վաստակել է «Հայոց պատմահայր» պատվատիտղոսը: Նա ծնվել է մոտավորապես 410 թ., Տարոնի Խորոնք գյուղում: Պատմահայրը սովորել է Վաղարշապատի մեսրոպատառ հայկական առաջին դպրոցում, ուր աշակերտել է Մեսրոպ Մաշտոցին և Սահակ Պարթևին: Վերջիններս 430 թ., դպրոցի մի խումբ խոստումնալից սաների հետ, Խորենացուն ուղարկում են Ալեքսանդրիա՝ կրթությունը շարունակելու և թարգմանական, քերականական, ճարտասանական, քերթողական արվեստներին տիրապետելու համար: Խոր և բազմակողմանի գիտելիքներով զինված, Խորենացին 440 թ. հետո վերադառնում է Հայաստան և իրեն նվիրում ստեղծագործական-թարգմանական գործունեության: Խորենացու անունով մեզ են հասել «Թուղթ առ Սահակ Արծրունի», «Պատմութիւն Հռիփսիմեանց, «Յաղագս Վարդավառի», «Յաղագս պիտոյից» և այլ երկեր: Սակայն նրան՝ որպես մատենագրի, մտածողի ու գործչի, նախ և առաջ բնութագրում է հռչակավոր «Պատմութիւն Հայոց» երկասիրությունը, որը նա ավարտել է 482 թ. առաջ, այսինքն՝ մինչև նրա Պատմության պատվիրատուի՝ Սահակ Բագրատունու մահը:*

Անգնահատելիորեն վիթխարի է Խորենացու Պատմության նշանակությունը հայ ժողովրդի հին և վաղ միջնադարյան պատմության ուսումնասիրության գործում: Գիտնական-հետազոտողի ճշմարտապատում այս երկը, որ գրված է բազմալեզու և բազմաբնույթ սկզբնաղբյուրների քննադատական վերլուծության հիման վրա, Հայոց ամբողջական պատմություն ստեղծելու ուղղությամբ կատարված առաջին աշխատանքն է:

Մովսես Խորենացու «Հայոց պատմությունից» ստորև տրված հատվածները բերել ենք Ստ. Մալխասյանցի թարգմանությունից, որը բնագրի հետ համեմատել ու խմբագրել են Վ. Դ. Առաքելյանը և Ա. Ա. Աբրահամյանը (տե՛ս Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Երևան, 1968):

1.

МОВСЕС ԽՈՐԵՆԱՑԻ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Ա

Ե

Թորգոմը սերում է Հայկին:
Հայկը սերում է Արամանյակին:
Արամանյակը սերում է Արամայիսին:
Արամայիսը սերում է Ամասիային:
Ամասիան սերում է Գեղամին:
Գեղամը սերում է Հարմային:
Հարման սերում է Արամին:
Արամը սերում է Արա Գեղեցիկին:

Ը

ԹԵ Ո՞Վ ԵՎ Ո՞ՐՏԵՂԻՑ ԳՏԱՎ ԱՅՍ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Պատմում են, Արշակ Մեծը՝[1] Պարսից և Պարթևների թագավորը, որ ինքն էլ ցեղով պարթև էր, ապստամբվեց մակեդոնացիների դեմ, թագավորեց ամբողջ Արևելքի և Ասորեստանի վրա, սպանեց Նինվեում Անտիոքոս թագավորին[2] և ամբողջ տիեզերքը հնազանդեցրեց

իրեն: Սա իր եղբորը՝ Վաղարշակին[3] թագավորեցնում է Հայաստանի վրա, այսպես նպատակահարմար համարելով, որպեսզի իր թագավորությունն անխախտ մնա: Նրան մայրաքաղաք է տալիս Մծբինը[4] և նրա համար սահմաններ է որոշում՝ Ասորիքի արևմտյան կողմից մի մասը, Պաղեստինը, Ասիան, ամբողջ Միջերկրայքը[5] և Թետալիան[6], Պոնտոս ծովից մինչև այնտեղ, ուր Կովկասը վերջանում է արևմտյան ծովի մոտ[7], նաև Ատրպատականը, և էլի՝ որքան քո միտքն ու քաջությունը կհասնեն, որովհետև, ասում են՝ քաջերի սահմանը նրանց զենքն է, որքան կտրում է, այնքան էլ գրավում է:

Սա իր իշխանությունը լիովին կարգի բերելով և իր թագավորությունը հաստատելով՝ կամեցավ իմանալ, թե ո՞վքեր արդյոք և ի՞նչպիսի մարդիկ տիրելիս են եղել Հայաստանի վրա իրենից առաջ, արդյոք ինքը անցյալ քաջերի՞ տեղն է գրավում, թե ապիկարների: Նա գտավ մի ուշիմ ասորի՝ Մար Աբաս Կատինա անունով[8], քաղդեական և հունական գրության մեջ վարժ, և նրան ուղարկեց իր եղբոր՝ Արշակ Մեծի մոտ արժանավայել ընծաներով, (խնդրելով) բանալ նրա առաջ արքունական դիվանը:



Մովսես Խորենացի

Թ

Արշակ Մեծն ընդունելով գրությունը Մար Աբաս Կատինայից, մեծ ուրախությամբ հրամայում է բանալ նրա առաջ արքունական դիվանը, որ Նինվեում էր[9], միաժամանակ ուրախանալով, որ այսպիսի մտադրություն ունի իր եղբայրը, որին վստահել էր իր թագավորության կեսը: Նա (Մար Աբասը) աչքի անցկացնելով բոլոր մատյանները՝ գտնում է մի մատյան հունարեն գրված, որ ուներ, ասում է, այսպիսի վերնագիր.

## ՄԱՏՅԱՆԻ ՍԿԻԶԲԸ

Այս մատյանն Ալեքսանդրի[10] հրամանով քաղդեերեն լեզվից թարգմանված է հունարենի և պարունակում է բուն հների և նախնիների պատմությունները:

... Մար Աբաս Կատինան այս մատյանից հանելով միայն մեր ազգի հավաստի պատմությունը հույն և ասորի գրերով՝ բերում է Մծբին Վաղարշակ թագավորին: Եվ բարեկազմ ու քաջ աղեղնավոր, հռետոր ու հանճարեղ, արի Վաղարշակը սա ստանալով, համարում է առաջինն իր գանձերի մեջ, դնում է արքունական պահեստը մեծ զգուշությամբ և հրամայում է մի մասը քարի վրա արձանագրել: Սրանից մենք հավաստի տեղեկանալով գրույցների կարգին՝ կկրկնենք այժմ, քո[11] հետաքրքրասիրության համար, հասցնելով մեր բնիկ նախարարությունները մինչև քաղդեացիների Սարդանապալը[12] և դեռ ավելի մոտ:

Դրա մեջ պատմության սկիզբը այսպես է.

«Աստվածներից առաջիններն ահեղ էին և երևելի ու աշխարհի մեծամեծ բարիքների պատճառ, աշխարհի և բազմամարդության սկիզբ: Սրանցից առաջ եկավ հսկաների սերունդը, խոշոր, հաղթանդամ, վիթխարի մարդիկ, որոնք ամբարտավանությամբ հղանալով ծնան աշտարակաշինության[13] անօրեն գաղափարը, որը և ձեռնարկեցին իրագործելու: Աստվածների ցասումից ինչ-որ ահագին և աստվածային հողմ փչելով կործանում է աշտարակը և մարդկանց յուրաքանչյուրին տալիս է (մյուսներին) անհասկանալի լեզուներ, որով նրանց մեջ աղմուկ և շփոթություն է ընկնում: Սրանցից մեկն էր և Հապետոսթյան Հայկը[14]՝ հաստ աղեղով ու հզոր նետաձիգ, անվանի և քաջ նախարարը»:

*Բայց մենք կդադարեցնենք գրուցաբանության այս կարգը, որովհետև մեր նպատակն է ոչ թե պատմությունն ամբողջությամբ գրել, այլ աշխատել ցույց տալ մեր առաջին և բուն հին նախնիներին: Արդ՝ նույն մատյանից սկսելով կասեմ. «Հապետոսթե, Մերոդ, Սիրաթ, Թակլադ, որ են Հաբեթը, Գոմերը, Թիրասը, Թորգոմը: Սրանից հետո նույն մատենագիրը շարունակելով ասում է կարգով՝ Հայկ, Արամանյակ և այլն, որոնց մասին արդեն հիշել ենք»:*

## *Ժ*

### ՀԱՅԿԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այս Հայկը, ասում է, վայելչակազմ էր, թիկնավետ, գեղագանգուր մազերով, վառվռուն աչքերով, հաստ բազուկներով: Սա քաջ և երևելի հանդիսացավ հսկաների մեջ, դիմադրող այն բոլորին, որոնք ձեռք էին բարձրացնում բոլոր հսկաների ու դյուցազունների վրա տիրապետելու: Սա խրոխտանալով ձեռք բարձրացրեց Բելի[15] բռնատիրության դեմ՝ երբ մարդկային ցեղը սփռվում, տարածվում էր ամբողջ երկրի լայնության վրա՝ բազմամբոխ հսկաների, անչափ կատաղիների և ուժեղների մեջ: Որովհետև այս ժամանակ ամեն մի մարդ, կատաղած, սուրն ընկերի կողն էր կոխում, ձգտում էր մյուսներին տիրելու, երբ Բելին պատահմամբ հաջողվեց բռնանալ և ամբողջ երկիրը գրավել: Հայկը չկամենալով սրան հնազանդվել, Բաբելոնում իր Արամանյակ որդուն ունենալուց հետո, չվեց գնաց Արարադի[16] երկիրը, որ գտնվում է հյուսիսային կողմերում՝ իր որդիներով, դուստրերով և որդիների որդիներով, զորավոր մարդկանցով՝ թվով մոտ երեք հարյուր հոգի, և ուրիշ ընդոծիններով[17], նրան հարած եկվորներով և բոլոր տուն ու տեղով: Գնում բնակվում է մի լեռան ստորոտում, դաշտավայր տեղում, որտեղ ապրում էին սակավաթիվ մարդիկ առաջուց ցրվածներից: Հայկը նրանց իրեն հնազանդեցնելով՝ այնտեղ կալվածական բնակելի տուն է շինում և տալիս է ժառանգություն Կադմոսին՝ Արամանյակի որդուն: Սա ճշտում է ասված անգիր հին զրույցները:*

*«Իսկ ինքը, ասում է (Մար Աբասը), մնացած մարդկանցով և տուն ու տեղով չարժվում է դեպի հյուսիս-արևմուտք. գալիս բնակվում է մի բարձրավանդակ դաշտում և այս լեռնադաշտի անունը կոչում է Հարք, այսինքն՝ թե այստեղ բնակվողները հայրեր են Թորգոմի տան*

*սերունդի։ Շինում է և մի գյուղ, որն իր անունով կոչում է Հայկաշեն»։ Այստեղ էլ պատմության մեջ հիշվում է, թե այս դաշտի հարավային կողմում, մի երկայնանիստ լեռան մոտ, ապրելիս են եղել առաջուց սակավաթիվ մարդիկ, որոնք կամովին հնազանդվել են դյուցազնին։ Այս էլ ճշտում են ասված անգիր զրույցները։*

## *ԺԱ*

### ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ԲԵԼԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

*Իր խոսքը շարունակելով (Մար Աբասը) ասում է, թե երբ Տիտանյան Բելը իր թագավորությունն ամենքի վրա հաստատեց, ապա իր որդիներից մեկին հավատարիմ մարդկանց հետ ուղարկեց հյուսիսային կողմը Հայկի մոտ, որ նա գա հնազանդության և խաղաղությամբ ապրի։ «Դու ցուրտ սառնամանիքների մեջ բնակվեցիր, ասում է, սակայն տաքացրու և մեղմացրու քո հպարտ բնավորության ցուրտ սառնությունը և ինձ հնազանդվելով խաղաղ ապրիր, որտեղ որ կհաճես իմ երկրում բնակվելու»։ Հայկը Բելի պատգամավորներին ետ է դարձնում խստությամբ պատասխանելով։ Ուղարկվածը վերադառնում է Բաբելոն։*

*Ապա Տիտանյան Բելը զորք է հավաքում նրա դեմ և հետևակ զորքի մեծ բազմությամբ գալիս հասնում է հյուսիս՝ Արարադ երկիրը, Կադմոսի տան մոտ։ Կադմոսը փախուստ է տալիս Հայկի մոտ, իրենից առաջ արագավազ սուրհանդակներ ուղարկելով։ «Գիտցած եղիր, ասում է, ով մեծդ դյուցազունների մեջ, որ Բելը դիմում գալիս է քո վրա անմահ քաջերով և երկնաղեղ հասակով կռվող հսկաներով։ Եվ ես իմանալով, որ նա մոտեցել է իմ տանը, փախա և ահա տագնապահար գալիս եմ քեզ մոտ։ Ուրեմն շտապիր մտածել, ինչ որ անելու ես»։*

*Իսկ Բելը հանդուգն ու հսկա ամբոխի զորությամբ ինչպես մի մեծ հորձանք զառիվայրից ներքև հեղեղվելով, շտապում է հասնել Հայկի բնակության սահմանները՝ վստահ լինելով զորավոր մարդկանց քաջության և ուժի վրա։ Այս ժամանակ ուշիմ ու խոհեմ, գեղագանգուր ու զվարթաչյա հսկան շտապով հավաքում է իր որդիներին ու թոռներին՝ թվով շատ նվազ, քաջ ու աղեղնավոր մարդկանց և ուրիշ մարդկանց, որ իրեն էին ենթարկվում, գնում հասնում է ծովակի ափ[18], որի ջրերը աղի են և իրենց մեջ մանր ձկներ են պարունակում։*

*Եվ իր զորքերը կանչելով՝ ասում է նրանց. «Երբ մենք դուրս կգանք Բելի ամբոխի դեմ, պետք է աշխատենք այն տեղին պատահել, որտեղ անցած կանգնած կլինի Բելը քաջերի բազմության մեջ, որպեսզի կամ մեռնենք և մեր աղխը Բելի ծառայության տակ ընկնի, կամ մեր մատների հաջողությունը նրա վրա ցույց տանք, նրա ամբոխը ցրվի և մենք հաղթություն տանենք»:*

*Եվ ամբողջ ասպարեզներ*[19] *դեպի առաջ անցնելով՝ հասնում են շատ բարձր լեռների միջև մի դաշտաձև տեղ: Եվ ջրերի հոսանքի աջ կողմում բարձրավանդակի վրա ամուր դիրք գրավելով, գլուխները վեր բարձրացնելով տեսնում են Բելի բազմաթիվ ամբոխի անկարգ հրոսակը, որ հանդուգն հարձակումով ցիրուցան սուրում է երկրի երեսի վրա, իսկ Բելը մեծ ամբոխով հանդարտ կանգնած էր ջրի ձախ կողմում մի բլրակի վրա՝ իբրև դիտանոցում: Հայկը ճանաչեց սպառազինված ջոկատի խումբը, որտեղ Բելը մի քանի ընտիր և սպառազինված մարդկանցով ամբոխի առաջն էր անցել, և երկար տարածություն կար նրա ու ամբոխի միջև: Նա կրում էր նշաններ կրող վերջերով երկաթե գլխանոց, թիկունքի և կրծքի վրա պղնձե տախտակներ, սրունքների և թևերի վրա պահպանակներ, մեջքը կապել էր գոտի, որի ձախ կողմից կախված էր երկսայրի սուրը. իր աջ ձեռքում բռնել էր հսկայական նիզակը, իսկ ձախում վահան, նրա աջ և ձախ կողմում գտնվում էին ընտիր զորականներ: Հայկը տեսնելով լավ սպառազինված Տիտանյանին և նրա աջ ու ձախ կողմի ընտիր մարդկանց՝ կանգնեցնում է Արամանյակին երկու եղբայրներով աջ կողմը: Կադմոսին իր ուրիշ երկու որդիներով ձախ կողմը, որովհետև սրանք աղեղ և սուր գործածելու մեջ հաջողակ մարդիկ էին, իսկ ինքը կանգնում է առջևից, իսկ մյուս բազմությունը կանգնեցնում է իր հետևում. դասավորում է մոտավորապես եռանկյունի ձևով և հանդարտ առաջ է շարժվում:*

*Եվ երկու կողմի հսկաները միմյանց հասնելով՝ երկրի վրա ահագին դղրդյուն բարձրացրին գրոհելով և իրար վրա ահ ու սարսափ գցեցին իրենց հարձակումների ձևերով: Այնտեղ երկու կողմից ոչ սակավ հաղթանդամ մարդիկ սրի բերանի հանդիպելով թավալվում ընկնում էին գետին, իսկ ճակատամարտը երկու կողմից էլ անլուծելի էր մնում: Այս անսպասելի սարսափելի դիպվածը տեսնելով Տիտանյան արքան զարհուրեց և ետ-ետ քաշվելով սկսեց բարձրանալ այն բլուրը, որտեղից իջել էր, որովհետև մտածում էր ամբոխի մեջ ամրանալ, մինչև ամբողջ զորքը հասնի, որպեսզի նորից ճակատ կազմի: Աղեղնավոր Հայկը այս բանը հասկանալով՝ իրեն*

*առաջ է նետում, մոտ է հասնում արքային, մինչև վերջը քաշում է լայնալիճ աղեղը, երեքթևյան նետը դիպցնում է նրա կրծքի տախտակին, և սլաքը չեչտակի անցնելով նրա թիկունքի միջով, գետին է խրվում և գոռոզացած Տիտանյանը այս կերպով կործանվում, ընկնում է գետին ու շունչը փչում: Իսկ ամբոխն այս մեծ քաջագործությունը տեսնելով փախչում է ամեն մեկը իր երեսը դարձած կողմը: Այսքանը բավական թող լինի այս մասին:*

*Բայց ճակատամարտի տեղը (Հայկը) հաղթական պատերազմի պատվին շինում է դաստակերտ և անունը դնում է Հայք: Այս պատճառով գավառն էլ մինչև այժմ կոչվում է Հայոց ձոր[20]: Իսկ այն բլուրը, որտեղ Բելն ընկավ քաջ զորականների հետ, Հայկը կոչեց Գերեզմանք, որ այժմ ասվում է Գերեզմանակ: Բայց Բելի դիակը, ասում է (Մար Աբասը), դեղերով զմռսելով՝ Հայկը հրամայում է տանել Հարք և թաղել մի բարձրավանդակ տեղում ի տես իր կանանց և որդիների: Իսկ մեր երկիրը մեր նախնի Հայկի անունով կոչվում է Հայք:*

## *ԺԲ*

ՀԱՅԿԻՑ ՍԵՐՎԱԾ ՑԵՂԵՐԻ ԵՎ ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ՄԱՍԻՆ,
ԵՎ ԹԵ ՆՐԱՆՑԻՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐՆ ԻՆՉ ԳՈՐԾԵՑ

*(Մար Աբասի) մատյանում սրանից հետո ուրիշ շատ բաներ են պատմվում. բայց մենք կշարունակենք այն, որ պիտանի է մեր հավաքման համար:*

*Սրանից հետո, ասում է նա, Հայկը դառնում է իր բնակության տեղը. իր Կադմոս թոռին պարգևում է շատ ինչք պատերազմի ավարից և անվանի մարդիկ իր ընդոծիններից: Նրան հրամայում է իր առաջին տանը բնակություն հաստատել, իսկ ինքը գնում դադար է առնում Հարք կոչված դաշտում: Սա տարիներ ապրելով, Արամանյակին սերեց Բաբելոնում, ինչպես վերն ասացինք. դրանից հետո դարձյալ ոչ քիչ տարիներ ապրելով՝ մեռավ, ամբողջ տոհմը հանձնելով իր Արամանյակ որդուն:*

*Իսկ սա իր եղբայրներից երկուսին՝ Խոռին և Մանավազին իրենց ամբողջ աղխով, ինչպես Մանավազի որդի Բազին, թողնում է Հարք կոչված տեղում: Սրանցից Մանավազը ժառանգում է Հարքը, իսկ նրա որդին՝ Բազը ժառանգում է աղի ծովի հյուսիսարևմտյան ափը և գավառն ու ծովը կոչում է իր անունով[21]: Ասում են, որ սրանցից են*

*առաջ եկել Մանավազյան և Բզնունյանց նահապետությունները, նաև Որդունի կոչվածը, որոնք վերջերս սուրբ Տրդատից[22] հետո, մեկը մյուսին ոչնչացրեց պատերազմով: Իսկ Խոռը բազմանում է հյուսիսային կողմերում, շեներ է հիմնում, և ասում են, որ նրանից սկսած մինչև այժմ շարունակվում է Խոռխոռունիների ցեղի մեծ նախարարությունը. քաջ և անվանի մարդիկ, որոնք այժմ էլ մեր ժամանակ երևելի են:*

*Իսկ Արամանյակը ամբողջ բազմությունն առնելով չվում է դեպի հյուսիս-արևելք և գնում իջնում է բարձրագագաթ լեռներով շրջապատված մի խոր դաշտավայր, որի միջով մի կարկաչահոս գետ է անցնում արևմտյան կողմից, և դաշտի արևելյան մասը կարծես մեջքի վրա պառկած երկարությամբ ձգված է արեգակի կողմը, իսկ լեռների ստորոտներում բխում են բազմաթիվ ականակիտ աղբյուրներ, որոնք միանալով, գետեր կազմելով, հեզաբար հոսում են նրանց սահմանների մոտ, լեռների ստորոտներով և դաշտի եզրերով, կարծես թե որպես պատանիներ պտտվում են երիտասարդուհիների շուրջը: Իսկ հարավային արեգակնասլաց լեռը, սպիտակափառ գագաթով, ուղիղ բուսել է երկրից՝ պինդ գոտեվորված մարդու երեքօրյա ճանապարհի շրջապատով, ինչպես ասաց մերոնցից մեկը, և հետզհետե սրվում է դեպի վեր, իսկապես մի ծերունի լեռ երիտասարդացած լեռների մեջ: Արամանյակն այս խոր դաշտում բնակվելով՝ շենցնում է մի մասը դաշտի հյուսիսային կողմում և լեռան ստորոտը նույն կողմում. լեռն իր անվան նմանողությամբ կոչում է Արագած, իսկ կալվածը՝ Ոտն Արագածո:*

*Բայց սքանչելի մի բան է ասում պատմագիրը, թե շատ տեղերում ցիրուցան բնակվում էին սակավաթիվ մարդիկ մեր երկրում նախքան մեր բնիկ նախնի Հայկի գալուստը:*

*Արամանյակը տարիներ ապրելուց հետո սերեց Արամայիսին, որից հետո էլ բավական տարիներ ապրելով մեռավ: Նրա որդին՝ Արամայիսն իր բնակության համար տուն է շինում գետի ափին մի բլուրի վրա և իր անունով այն կոչում է Արմավիր, իսկ գետի անունը իր թոռան՝ Երաստի անունով դնում է Երասխ: Իսկ իր որդուն՝ բազմազավակ և շատակեր Շարային ամբողջ ազխով ուղարկում է մի մերձակա արգավանդ ու բերրի դաշտ, հյուսիսային լեռան Արագածի թիկունքում, որտեղից շատ ջրեր են հոսում. նրա անունով, ասում են, գավառը կոչվեց Շիրակ: Ուստի, թվում է, թե ճշտվում է գյուղացիների մեջ տարածված առասպելը. «Թե քո որկորը Շարայի որկորն է, բայց մեր ամբարները Շիրակի ամբարները չեն»: Այս Արամայիսը*

*տարիներ ապրելով սերեց իր որդի Ամասիային, որից հետո էլի տարիներ ապրելով մեռավ:*

*Ամասիան Արմավիրում բնակվելով՝ տարիներ անցնելուց հետո սերում է Գեղամին և Գեղամից հետո արի Փառոխին ու Ցոլակին: Սրանց սերելուց հետո գետն անցնում, մոտենում է հարավային լեռան: Այստեղ լեռան ստորոտում՝ խորշերում խոշոր ծախսերով շինում է երկու տուն, մեկը արևելյան կողմում՝ լեռան ստորոտից բխող աղբյուրների ակունքների մոտ, իսկ մյուսը՝ նույն տնից դեպի արևմուտք նրանից հեռու՝ հետևակ մարդու կեսօրվա ճանապարհով երկար օրում: Սրանք նա տվեց ժառանգություն իր երկու որդիներին՝ արի Փառոխին և կայտառ Ցոլակին, որոնք այնտեղ բնակվելով իրենց անունով կոչեցին այդ տեղերը, Փառոխից՝ Փառախոտ և Ցոլակից՝ Ցոլակերտ: Իսկ լեռը Ամասիան իր անունով կոչեց Մասիս[23] և հետո նորից Արմավիր դառնալով կարճ տարիներ ապրեց ու մեռավ:*

*Իսկ Գեղամը տարիներ անցնելուց հետո Արմավիրում սերեց Հարմային. նա Հարմային թողեց Արմավիրում բնակվելու իր որդիների հետ, իսկ ինքը գնաց հյուսիս-արևելքում եղած մյուս լեռան հետևի կողմը՝ մի ծովակի ափ: Նա շենցնում է ծովակի ափը, թողնում է այնտեղ բնակիչներ և իր անունով լեռը կոչում է Գեղ, իսկ շեները՝ Գեղարքունի, որով կոչվում է նաև ծովը: Այստեղ նա սերեց իր Սիսակ որդուն, որ մի սեգ ու թիկնավետ, վայելչակազմ, ճարտասան և գեղեցիկ աղեղնավոր էր: Նրան տվեց իր ստացվածքի մեծ մասը և բազմաթիվ ծառաներ, և նրան ժառանգական սահման կտրեց ծովից դեպի արևելք մինչև այն դաշտը, ուր Երասխը սեպացած լեռները ճեղքելով, երկար ու նեղ ձորերով անցնելով, ահագին շառաչյունով թափվում է դաշտը: Սիսակն այստեղ բնակվելով իր բնակության սահմանները լցնում է շինություններով և երկիրը իր անունով կոչում է Սյունիք. բայց պարսիկներն ավելի ճիշտ կոչում են Սիսական:*

*Վերջերը Հայոց առաջին թագավոր Վաղարշակը՝ Պարթև ցեղից, գտնելով սրա սերունդներից անվանի մարդիկ՝ այս երկրին տերեր է նշանակում, որ Սիսական ցեղն է: Վաղարշակը այս անում է պատմությունից իմանալով, իսկ թե ի՞նչպես այս եղավ, իր տեղում կպատմենք:*

*Իսկ ինքը Գեղամը նորից դառնում է հիշյալ դաշտը, և նույն լեռան ստորոտում, մի ամուր ձորակում շինում է մի դաստակերտ և անունը դնում է Գեղամի, որ հետո նրա թոռան՝ Գառնիկի անունով կոչվեց Գառնի: Վերջերը, Վաղարշակի թոռան՝ Արտաշեսի ժամանակ, սրա սերունդներից մի պատանի է եղել Վարաժ անունով, եղջերուների,*

*այծյամների և վարազների որսերում հաջողակ, ուժեղ և ճիշտ նետաձիգ: Սրան (Արտաշեսը) նշանակում է արքունական որսերի վրա և շեններ է պարգևում Հրազդան կոչված գետի ափին: Սրանից, ասում են, առաջ է եկել Վարաժնունյաց տունը: Այս Գեղամը, ինչպես ասացինք, տարիներ ապրելով սերեց Հարմային, որից հետո էլի ապրելով, մեռավ և իր որդուն՝ Հարմային հրամայեց Արմավիրում բնակվել:*

*Այս Հայկը՝ Թորգոմի որդին, Թիրասի որդին, Գամերի որդին, Հաբեթի որդին,– հայաստանցիների նախնին է. և այս են նրա ցեղերն ու սերունդները և նրանց բնակության երկիրը: Այնուհետև, ասում է (Մար Աբասը), նրանք սկսեցին բազմանալ և երկիրը լցնել:*

*Հարման տարիներ ապրելով սերեց Արամին:*

*Արամի մասին պատմում են, թե շատ քաջագործություններ է կատարել հաղթական պատերազմներում և ընդարձակել է Հայաստանի սահմանները բոլոր կողմերից, որի անունով էլ բոլոր ազգերը կոչում են մեր երկիրը, ինչպես հույները՝ Արմեն, իսկ պարսիկներն ու ասորիները՝ Արմենիկ*[24]*:*

*1. **Արշակ Մեծ** – «Արշակը» պարթևական անուն է, որը կրել է պարթև Արշակունիների հիմնադիր թագավորը՝ ապարն կամ պարն ցեղի առաջնորդը: Ք. ա. 250 թ. Արշակը ապստամբում է Սելևկյանների դեմ և 247 թ. իրեն հռչակում է թագավոր: Այնուհետև պարթևական ամեն մի թագավորի անվան մոտ այս անունը գործ է ածվել իբրև պարտադիր ղինաստիական անուն–տիտղոս (տե՛ս **Ստրաբոն**, Աշխարհագրություն, XV, 1, 36): Նորագույն ուսումնասիրություններում Արշակունիների հիմնադիր թագավոր է համարվում Տրդատ I-ը (247–211), որին նույնացնում են Արշակ I Մեծի հետ:*

*2. **Անտիոքոս** – խոսքը Սելևկյան պետության թագավոր Անտիոքոս II Թեոսի (261–246) մասին է: Պարթևների դեմ մղված պատերազմների ժամանակ սա պարտություն կրեց՝ կորցնելով Բակտրիա, Սողդիանա և Մարգիանա երկրամասերը:*

*3. Կիսաառասպելական անձնավորություն է: Ուսումնասիրողները ցույց են տվել, որ Խորենացու «Վաղարշակ» թագավորը հավաքական անձնավորություն է, բաղկացած Արտաշես I-ի, Տրդատ I-ի, Վաղարշ II-ի և հայ այլ թագավորների առանձին գծերից: Իր հիմնական գծերով այս «Վաղարշակը» նույնացվում է Մեծ Հայքի թագավոր Տրդատ I-ի (66–88) հետ: Պարզ է, որ Հայոց «Վաղարշակ»՝ Տրդատ I թագավորը չէր կարող լինել եղբայրը Պարթևաց Արշակ Մեծի, իրականում նա եղբայրն է Պարթևաց արքայից արքա Վաղարշ I-ի (52–80), որը և Տրդատին պսակել է Հայոց թագավոր: Դրանով իսկ Հայաստանում հաստատվել*

*է Արշակունիների մի առանձին տոհմաճյուղը՝ հանձինս Արշակունիների Հայկական հարստության (66–428)։*

*4. Պետք է ուղղել Մծուրն կամ Մծուրք։ Նախ՝ Միջագետքում գտնվող Մծբին քաղաքը երբեք չի եղել հայ Արշակունիների պետության մայրաքաղաք։ Երկրորդ, ըստ երևույթին, Խորենացու օգտագործած աղբյուրում քաղաքը կոչվել է Մծուրն, սակայն Պատմահորը անծանոթ է մնացել այս անվանումը, քանի որ Մծուրնը IV դարի կեսերին արդեն հիմնահատակ կործանված էր երկրաշարժից։ Ուստի Վաղարշակի աթոռանիստ քաղաքի անվանումը Խորենացին խմբագրել է իրեն հայտնի Մծբին քաղաքի անունով։*

*Ըստ Փավստոսի, Մծուրնը հիմնել է Հայոց Սանատրուկ թագավորը (88–110)։ Այն գտնվում է Տիգրան Մեծի կառուցած «Արքունի պողոտայի» վրա, որը Արտաշատը կապում էր Տիգրանակերտի հետ։ Մծուրնը տեղադրվում է Արածանի գետի հովտում, Բյուրակն գետի թափվելու վայրում՝ Մշո դաշտի արևմտյան կողմում։*

*5. Վաղ միջնադարյան հայ մատենագրության մեջ «Միջերկրայք» են կոչվել Փոքր Ասիայում գտնվող բոլոր երկրները՝ միասին վերցրած։*

*6. Ըստ երևույթին, խոսքը Թեսսալիայի մասին է (երկրամաս Հունաստանի հյուսիսում), քանի որ հայկական աղբյուրների Թետալիան դա Բակտրիան է՝ Քուշանաց երկիրը։ Հասկանալի է, որ Արշակ Մեծը չէր կարող Վաղարշակին տալ մի երկրամաս, որն իր թագավորության կենտրոնական մասն էր կազմում։*

*7. **Արևմտյան ծով** – Կասպից ծովն է։ Պետք է նկատել, որ, իրոք, պարթև Արշակունիների համար Կասպից ծովը գտնվում էր Արևմուտքում։*

*8. **Մար Աբաս Կատինա** (Մարաբա Մծուրնացի) – ասորի փիլիսոփա և պատմագիր։ Մարաբան գրել է մի «Հայոց պատմություն» (ըստ երևույթին՝ հունարեն), որը մեզ չի հասել։ Նրա բովանդակության մասին պատկերացում ենք կազմում այն հեղինակների երկերից, որոնք անմիջականորեն օգտվել են Մարաբայի մատյանից. դրանք են՝ Մովսես Խորենացին, Անանունը և Պրոկոպիոս Կեսարացին։*

*Մովսես Խորենացու պնդմամբ՝ Մարաբայի մատյանը գրվել է Ք. ա. II դարի երկրորդ կեսում, սակայն, ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, այն իրականում գրվել է ոչ վաղ, քան Ք. հ. III դարում։*

*9. Խորենացին չփոթում է. այս իրադարձությունների ժամանակ Նինվե քաղաքն այլևս գոյություն չուներ։ Այն Ք. ա. 612 թվականին հիմնահատակ կործանել ու հողին էին հավասարեցրել Նորբաբելոնական պետության թագավոր Նաբոպալասարը և Մարաստանի թագավոր Կիաքսարը։*

*10. **«Ալեքսանդրի հրամանով»**– խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու մասին է։*

*11. Խոսքն ուղղված է Մովսես Խորենացու մեկենաս Սահակ Բագրատունուն, որի հանձնարարությամբ Պատմահայրը ձեռնամուխ էր եղել իր «Պատմություն Հայոցի» շարադրմանը։*

*Սահակ ասպետ Բագրատունին իր ժամանակի (V դարի երկրորդ կես) հայ քաղաքական կյանքի աչքի ընկնող գործիչներից մեկն էր: Վահան Մամիկոնյանի հետ նա 481-482 թթ. գլխավորել է հայ ժողովրդի ազատագրական պայքարն ընդդեմ պարսկական բռնակալության: Ապստամբների կողմից հռչակվել է Հայոց մարզպան: Սպանվել է 482 թ.՝ Ճարմանայի ճակատամարտում:*

*12. **Սարդանապալ** - Ասորեստանի թագավոր Աշշուրբանապալն է (668-633):*

*13. Ըստ Աստվածաշնչի, համաշխարհային ջրհեղեղից հետո մարդիկ փորձել են Բաբելոն քաղաքում աշտարակ կառուցել, որի բարձրությունը հասնելու էր երկինք: Զայրանալով մարդկանց ամբարտավանության ու հանդգնության վրա՝ Աստված «խառնում է նրանց լեզուները»: Մարդիկ դադարում են իրար հասկանալ և ցրվում են աշխարհով մեկ (տե՛ս **Ծննդոց**, գլ. ԺԱ, 1-10):*

*14. Մարաբան և նրա հետևորդ հայ պատմագիրները Հայկին համարում են Հաբեթի թոռան՝ Թորգոմի որդին: Այստեղից էլ Հայկի Հաբեթոսյան անվանումը: Հայկի և Բելի առասպելում հեռավոր արձագանքներ են պահպանվել հայ ժողովրդի կազմավորման ընթացքի մասին: Այստեղ Հայկը հանդես է գալիս որպես հայերի էպոնիմ (անվանադիր). նրա անվան հետ է կապված հայ ժողովրդի անունը:*

*15. Բաբելոնական գերագույն աստված, Բաբելոն քաղաքի հովանավորողը: Նույնացվել է Սատուրն մոլորակին: Աստվածաշնչում Բելը հիշատակված է Քամյան Քուշի որդի Նեբրովթ անունով, որպես Բաբելոնի առաջին թագավոր:*

*16. Տե՛ս 283-րդ էջ, ծան. № 5:*

*17. Տան ոչ արյունակից անդամներ:*

*18. Խոսքը Վանա լճի մասին է:*

*19. Հին Արևելքի երկրներում տարածված երկարության միավոր: Պարսից ասպարեզը հավասար էր 230 մետրի:*

*20. Ուսումնասիրողներն այս գավառը տեղադրում են Վան քաղաքից հարավ՝ Հայոց ձոր (Խոշաբ) գետի հովտում (տե՛ս **Ս. Երեմյան,** Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 51):*

*21. Խոսքը Վանա (Բզնունյաց) լճի և Մեծ Հայքի Տուրուբերան աշխարհի 11-րդ գավառ Բզնունիքի մասին է:*

*22. **Սուրբ Տրդատ** - Հայոց Տրդատ III Մեծ թագավորն է (298-330), որի օրոք քրիստոնեությունը Հայաստանում հռչակվեց համապետական կրոն:*

*23. **Մասիս** - Հայկական լեռնաշխարհի ամենաբարձր (5156 մ) լեռնագագաթն է: Աստվածաշնչի վաղ քրիստոնեական մեկնիչները Մասիսը համարում էին այն լեռը, որի վրա կանգ է առել Նոյի տապանը:*

*24. Ուսումնասիրողները ցույց են տվել, որ Արամի դյուցազնական առասպելի ծագումը վերաբերում է Ուրարտական թագավորության ժամանակներին: Այն մի կողմից իր մեջ պարունակում է Ուրարտուի, նրա Արամե թագավորի հա -*

*կաասորեստանյան պայքարի հեռավոր արձագանքները, իսկ մյուս կողմից՝ Արամը հանդես է գալիս որպես հայ ժողովրդի էպոնիմ (անվանադիր)։*

## *2.*

## *ՍԵԲԵՈՍ*

***Հայ ժողովրդի ծագման մասին ավանդություն կա պահպանված նաև VII դարի ականավոր պատմիչ Սեբեոսի «Պատմություն» երկասիրությունում։ Սեբեոսի ավանդած զրույցները տեղ են գտել նրա երկասիրության Ա դպրությունում [Պատմության նոր հրատարակություններում (1979, 2004)՝ վերանվանվել է գլուխ Ա]։ Ուսումնասիրողներից շատերն այն կարծիքն են հայտնել, թե Սեբեոսի Ա և Բ դպրությունները պատկանում են մի այլ՝ Անանուն հեղինակի, և հանգամանքների բերումով են հայտնվել Սեբեոսի երկում։ Այնուհանդերձ, ինչ էլ որ լինի այդ դպրությունների հեղինակային պատկանելության հարցը, դրանք միշտ էլ հրատարակվել են որպես Սեբեոսի երկասիրության անբաժանելի մաս։***

***Սեբեոսի երկի լավագույն՝ քննահամեմատական բնագրի հրատարակությունն իրականացրել է Գ. Վ. Աբգարյանը (Երևան, 1979)։ «Պատմությունից» ստորև տրված հատվածը բերել ենք Գ. Խաչատրյանի և Վ. Եղիազարյանի աշխարհաբար թարգմանությունից (տե՛ս Սեբեոս, Պատմություն, Երևան, 2004)։***

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## *Գլուխ Ա*

*Բայց ես նախ և առաջ սկսեմ պատմել սարսափազդու արքայի և արի մարդու մասին վեպը. նախ նախնիների պատմությունները, որտեղից եղավ ողջ երկրի լրիվ բնակեցման սկիզբը և ապա նրանց կցել հսկայազունների զրուցախառն վեպերն ու ունայն առասպելները անմիտ զորությունների, որոնց, մեծ աշտարակ կառուցելու պատճառով <հողմը> առհավետ ցրեց մեծ անապատով մեկ, ուր անդադար <տարբեր> բարբառների անլուր կացության մեջ Տիտանը*

*սուր վերցրեց ընկերոջ դեմ և առաջինը թագավորեց երկրի վրա:*

*Տիտանյան Բելը[1] մարդկային ամենայն ազգերից իրեն բարձր էր կարծում. չէր ճանաչում իր էությունը, այլ մարդկային բոլոր ազգերին իրեն ծառայության էր կանչում: Ապա այն ժամանակ Աբեթածին Հայկը[2] չկամեցավ հնազանդվել Բել արքայի ծառայությանը. հրաժարվեց նրան աստված կոչել: Այնտեղ Բելը մարտի գնաց Հայկի վրա, իսկ արի Հայկը աղեղով հալածեց նրան:*

*Արդ՝ սա այն Հայկն է, որ Բաբելոնում[3] ծնեց իր որդի Արամենակին: Եվ ծնեց Արամենակը բազում ուստրեր և դուստրեր, որոնցից անդրանիկը Արամայիսն է: Եվ ծնեց Արամայիսը բազում ուստրեր ու դուստրեր, որոնցից անդրանիկը Ամասիան է: Եվ ծնեց Ամասիան բազում ուստրեր ու դուստրեր, որոնցից անդրանիկը Գեղամն է: Եվ ծնեց Գեղամը բազում ուստրեր ու դուստրեր, որոնցից անդրանիկը Հարման է: Եվ ծնեց Հարման բազում ուստրեր ու դուստրեր, որոնցից անդրանիկը Արամն է: Եվ ծնեց Արամը բազում ուստրեր ու դուստրեր, որոնցից անդրանիկը Արա Գեղեցիկն է:*

*Արդ՝ այս են տոհմապետ այրերի՝ Բաբելոնում ծնված անդրանիկների և Արարադի երկրից դեպի հյուսիսի կողմերը գնացածների անունները: Քանզի չվեց գնաց Բաբելոնից Հայկը կնոջով, որդիներով և ամենայն աղխով[4] հանդերձ: Եվ գնաց բնակվեց Արարադ երկրում՝ այն տանը, որ լեռան ստորոտում էր, որ առաջ չինել էր Զրվանը հոր և եղբայրների հետ:*

*Եվ ապա Հայկը իբրև ժառանգություն՝ այն տվեց իր Կադմոս թոռին՝ Արամենակի որդուն: Եվ ինքը չվեց անցավ այնտեղից էլ դեպի հյուսիս և գնաց բնակվեց մի բարձրավանդ դաշտավայրում, և այն դաշտի անունը Հայրերի անունով կոչվեց Հարք:*

*Իսկ երկիրը, ինչպես նրան արժանի էր, անվանակոչվեց Հայք, ուր բնակվում են հայազգիներով:*

*Եվ արդ՝ այս Հայկը զորությամբ հզոր, էությամբ բարի, աղեղով կորովի և քաջամարտիկ էր:*

*Այն ժամանակ Բաբելոնում թագավորեց հսկա որսորդ Տիտանյան Բելը, չաստվածացյալ բռնակալը, որը սաստիկ զորություն ուներ և հույժ գեղեցիկ տեսք: Եվ բոլոր ազգերի իշխանն էր, որոնք սփռվեցին ամենայն երկրի երեսին: Նա աչառու կախարդությամբ հնարքներ գործադրեց և թագավորական հրամաններ <արձակեց> ամենայն ազգերին, իր ամբարտավան գոռոզությամբ կանգնեցրեց իր արձանը և երկրպագել ու զոհեր մատուցել տվեց՝ իբրև աստծո:*

*Իսկույն ևեթ բոլոր ազգերը կատարեցին նրա հրամանները, բայց*

*Հայկ անունով մեկը՝ ազգերի նահապետ, չհնազանդվեց նրա ծառայությանը, նրա արձանը չկանգնեցրեց իր տանը և չմեծարեց նրան աստվածավայել շուքով:*

*Նրա անունը Հայկ էր: Նրա նկատմամբ Բել արքան մեծ ոխով լցվեց: Եվ Բաբելոնում զորաժողով արեց ու դիմեց գնաց Հայկի վրա՝ նրան սպանելու:*

*Եկավ հասավ Արարադ երկիր՝ այն տունը, որը նրանց նախնիներինն էր, և որը շինել էր լեռան ստորոտում: Կադմոսը փախստական գնաց Հարք՝ իր հոր մոտ՝ նրան լուր տալու, և ասում է. «Բել արքան դիմել գալիս է քեզ վրա և եկավ հասավ մինչև <մեր> տան կողմերը, և ես իմ կնոջով ու որդիներով ահավասիկ փախստական գալիս եմ»:*

*Հայկը վերցրեց Արամենակին, նրա որդի Կադմոսին, նրանց որդիներին, իր յոթ դուստրերի որդիներին ու սակավաթիվ հսկա այրերի:*

*Եվ Հայկը ելավ Բել արքայի դեմ, բայց չկարողացավ սպառազեն հսկա այրերի բազմությանը դիմակայել:*

*Այնտեղ Հայկը ելավ Բելի դեմ, և Բելը կամեցավ նրան իր ձեռքը գցել: Խույս տվեց Հայկը նրանից և գնաց փախստական, իսկ նրա հետևից փութով գնաց նաև Բելը իր զինակրի հետ:*

*Հայկը կանգ առավ և ասաց նրան. «Ինչո՞ւ ես կրնկակոխ գալիս իմ հետևից, դարձի՛ր շուտով քո տեղը, որ չմեռնես այսօր իմ ձեռքով, քանի որ իմ նետը չի վրիպում»: Բելը պատասխան տվեց և ասաց. «Նրա համար, որ չընկնես իմ կտրիճների ձեռքը և մեռնես, հանձնվի՛ր իմ ձեռքը և խաղաղությամբ ապրի՛ր իմ տանը՝ ղեկավարելով իմ տան որսորդ զինվորներին»:*

*Պատասխան տվեց նրան Հայկը և ասաց. «Շուն ես դու և շների ոհմակից. և՛ դու, և՛ քո ժողովուրդը: Եվ դրա համար այսօր իսկ պիտի դատարկեմ իմ կապարճը քեզ վրա»: Տիտանյան արքան սպառազինվեց և հույսը դրեց իր կուռ սպառազինության վրա:*

*Եվ Աբեթյան Հայկը մոտեցավ. իր ձեռքին բռնել էր աղեղը, ինչպես մայրափայտի հզոր գերան: Հայկը կանգ առնելով՝ պատրաստվեց նրա դեմ աղեղով: Եվ գետնից վեր տնկեց նետը լայնալիճ աղեղի մեջ և քաշելով աղեղը՝ նետով զորությամբ խոցեց երկաթի լանջապանակը և պղնձի վահանի միջով մխրճեց մսեղեն արձանի մեջ. ձգված նետը խրվեց գետնի մեջ. իսկույն գետին կործանեց աստվածակարծյալ հսկային, իսկ նրա զորքը փախուստի դիմեց: Եվ նրանք հետապնդելով խլեցին նրանցից ձիերի, ջորիների և ուղտերի երամակները:*

*Հայկը դարձավ իր տեղը և գնաց գրավեց Արարադ երկիրը ու*

*բնակություն հաստատեց այնտեղ իր ազգով մինչև այժմ: Եվ երբ ինքը մեռնում էր, այն՝ իբրև ժառանգություն, տվեց իր Կադմոս թոռանը՝ Արամենակի որդուն, Հարմայի եղբորը: Իսկ Արամենակին հրամայեց գնալ դեպի հյուսիս, ուր ինքն իսկ դադար առավ նախկինում:*

*Եվ եղավ՝ Հայկի մահից հետո Արամենակը վերցրեց իր որդիներին, իր դուստրերին ու նրանց ամուսիններին, յոթ քույրերին ու նրանց ամուսիններին, ուստրերին ու նրանց դուստրերին և ամբողջ իր տոհմին ու գնաց բնակվեց դարձյալ առաջին գավառում, որն իրենց հայրերի անունով կոչեցին Հարք: Ապա Արամենակը այնտեղից էլ չարժվեց դեպի հյուսիս և գնալով իջավ մի խոր դաշտավայրային երկիր, որը գտնվում էր բարձրաբերձ լեռների միջև, և նրա միջով կտրում անցնում է հորդառատ գետ, որն անցնելով՝ Արամենակը բնակություն հաստատեց այնտեղ և այդ լեռնային ու քարքարոտ վայրը շինեց իր ժառանգական երկիրը:*

*Արամենակից հետո նրա որդի Արամայիսը գետեզրի վրա իր համար շինեց բնակության տուն և նրա անունը, ըստ իր անվան, անվանեց Արամայիր[5]: Եվ նրա որդիները սկսեցին բազմանալ ու լցնել երկիրը: Եվ հիմնեցին գավառներ:*

*Մեռավ և Արամայիսը, և երկրին տիրեց նրա որդի Ամասիան: Եվ ապա նրանից հետո՝ Գեղամը: Մեռավ Գեղամը, և տիրեց նրա որդի Հարման, ապա՝ Հարմայի որդի՝ Արամը: Ապա՝ նրա որդի Արա Գեղեցիկը, որի անունով էլ այն դաշտը կոչվեց Այրարատ:*

*Եվ ասորիների Նինոս արքայի կին Շամիրամը, քանի որ լսեց նրա գեղեցկության մասին, կամեցավ նրա հետ բարեկամություն հաստատել որպեսզի <Արան> կատարի իր պոռնկական ցանկությունը. համաձայն համբավի՝ սաստիկ ցանկանում էր նրան և նրա գեղեցկությունը, քանի որ այն ժամանակ ամենևին չկար նրա նման ճոխապատկեր որևէ տղամարդ: Նվերներով նրա մոտ բանախոսներ ուղարկեց և կանչեց նրան իր մոտ՝ Նինվե[6]: Սակայն Արան ոչ նրա նվեր<ներ>ն ընդունեց և ոչ էլ հանձն առավ գնալ Նինվե՝ Շամիրամի մոտ: Ապա Շամիրամն առավ իր զորքերը և գնաց Հայաստան՝ նրա վրա: Եկավ հասավ Արայի դաշտը և պատերազմեց Արայի դեմ, ջարդեց զորքին և պատերազմի ժամանակ սպանեց Արային:*

*Եվ հրամայեց Շամիրամը նրա դին տանել իր ապարանքի վերնատունը և ասաց. «Եվ կասեմ աստվածներին՝ լիզեն նրա վերքերը, և կկենդանանա»:*

*Իսկ երբ նրա դին վերնատանը նեխեց, գաղտնի հրամայեց փոսի մեջ գցել և ծածկել: Եվ զարդարեց իր հոմանիներից մեկին՝ մի*

*համապատասխան տղամարդու, և լուր տարածեց, թե աստվածները լիզել և կենդանացրել են Արային: Պահում էր գաղտնի և նրա ծանոթներից ոչ մեկին ցույց չէր տալիս նրան, և այսպես Շամիրամ թագուհին տարածեց արալեզների համբավը:*

*Այնժամ տիրեց Շամիրամը Հայաստան երկրին, և այնուհետև Ասորեստանի թագավորները տիրեցին մինչև Սենեքերիմի մեռնելը. ապա ապստամբեցին Ասորեստանի թագավորների ծառայության դեմ:*

*1. Անանունը Բելին անվանում է Տիտանյան՝ օգտվելով Մարաբաս Մծուրնացու մատյանից: Խորենացին, իր հերթին օգտվելով Մար Աբաս Կատինայի մատյանից, գտնում է, որ Տիտանյան Բելը Նեբրովթն է:*

*2. **Աբեթածին Հայկ** – Հայկը, ըստ Խորենացու, Նոյի որդի Հաբեթի սերնդից է, իսկ Բելը՝ Նոյի որդի Քամի սերնդից:*

*3. **Բաբելոն** – քաղաք Միջագետքում՝ Եփրատ գետի ափին: Ք. ա. 1894-539 թթ. եղել է նաև նույնանուն հնագույն պետություն Տիգրիս և Եփրատ գետերի ավազանում: **Բաբելոն** բառացի նշանակում է «Աստծու դարպաս»:*

*4. **Աղխ** – «գերդաստան», «կայք», «ստացվածք»:*

*5. **Արամայիր**-ը Խորենացու հիշատակած Արմավիրն է:*

*6. **Նինվե** – Ասորեստանի հնագույն քաղաքներից էր, գտնվում էր Տիգրիս գետի ձախ ափին: Ք. ա. VIII դարի վերջերին և VII դարում Ասորեստանի մայրաքաղաքն էր: Տարածված էր Տիգրիսի ափին 4 կմ երկարությամբ: Հռչակավոր էր իր խոշոր գրադարանով, որտեղ կար ավելի քան 30 հազար սեպագիր կավե սալիկ: Ք. ա. 612 թվականին քաղաքը կործանել են բաբելամարական զորքերը:*

## ՎՐԱՑԱԿԱՆ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

***Հայ ժողովրդի ծագման մասին մեզ է հասել նաև վրացական մի ավանդություն, որը բերված է վրաց պատմագիր Լեոնտի Մրովելիի (Ռուիսեցի) «Վրաց թագավորների և նախահայրերի ու տոհմերի պատմությունը» երկասիրության մեջ: Վրացագիտությունը վաղուց ապացուցել է, որ այս ավանդությունը ստեղծվել է չատ ուշ ժամանակաշրջանում, ըստ երևույթին IX-X դարերում, իսկ արդեն XI դարի մատենագիր Մրովելին այն մուծել է իր Պատմության մեջ:***

***Մրովելու երկը ներկայացնում է Վրաստանի պատմությունը***

*առասպելական-դյուցազնական շրջանից մինչև Ք. հ. V դարը: Հենց սրանով էլ սկսվում է «Քարթլիս ցխովրեբա» ժողովածուն, որը, ինչպես հայտնի է, տարբեր ժամանակներում գրված պատմությունների հավաքածու է: Իր Պատմությունում Մրովելին փորձում է բացահայտել Կովկասում բնակվող ժողովուրդների և, առաջին հերթին, վրաց ժողովրդի ծագումը: Այս հարցի լուսաբանման համար նա օգտագործում է առասպելախառն ավանդություններ և գալիս այն համոզման, որ կովկասյան ժողովուրդները առաջացել են մեկ ընդհանուր նախահորից: «Ութ եղբայրների պատմությունը» ակնհայտորեն իր վրա կրում է «Հայկ և Բել» հայկական ավանդության կնիքը, կարծիք կա նաև, որ առաջինը ստեղծվել է վերջինիս անմիջական ազդեցության ներքո՝ նրա նմանությամբ ու հետևությամբ: Հետևաբար, վրացական ավանդությունը հայ ժողովրդի ծագման հարցի ուսումնասիրման տեսակետից առանձին գիտական արժեք չունի: Սակայն այն մի գեղեցիկ ասք է հայ և վրաց ժողովուրդների բարեկամության, նրանց փոխադարձ օգնության, եղբայրության ու օտարերկրյա նվաճողների դեմ համատեղ պայքարի մասին:*

*«Քարթլիս ցխովրեբա»-ից ստորև բերված հատվածը տալիս ենք **Վ. Մ. Մարտիրոսյանի** թարգմանությամբ* (“ქართლის ცხოვრება” կազմող՝ **Ս. Ղաուխչիշվիլի**, հատ. I, Թբիլիսի, 1955):

## ԼԵՈՆՏԻ ՄՐՈՎԵԼԻ

### ՎՐԱՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԵՎ ՆԱԽԱՀԱՅՐԵՐԻ ՈՒ ՏՈՀՄԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

### ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

**Գլուխ առաջին**

[Ութ եղբայրների պատմությունը], էջ 3-7

*Նախապես հիշատակենք այսպես, քանզի հայոց և վրաց, ռանաց[1] և մովականաց[2], հերաց[3] և լեզգաց[4], եգերաց[5] և կովկասեցոց՝[6] սրանց բոլորի հայրը մեկն էր, Թարգամոս[7] անվամբ: Այս Թորգամոսը Թարշի որդին էր, Նոյի որդի Հաբեթի թոռն էր[8]:*

*Եվ այս Թարգամոսը քաջ մարդ էր: Եվ լեզուների բաժանումից հե-*

*տո, երբ Բաբելոնում աշտարակ կառուցեցին, բաժանվեցին այնտեղ լեզուները ու սփռվեցին այնտեղից ողջ աշխարհով մեկ: Եվ այս Թարգամոսն իր տոհմով (գերդաստանով) եկավ ու բնակություն հաստատեց մարդկանց համար անմատչելի երկու լեռների՝ Արարատի և Մասիսի միջև[9]: Եվ նրա տոհմը (գերդաստանը) մեծ էր ու անհամար, քանզի ապրում էին բազմակին որդիներով ու դուստրերով և նրա որդիների ու թոռների որդիներով ու դուստրերով, քանզի նա (Թարգամոսը) ապրեց վեցհարյուր տարի:*

*Իսկ երկիրն այն, որ վիճակ (բաժին) ընկավ նրան, այսպիսի սահման ուներ. արևելքից՝ Գուրգանի ծովը[10], արևմուտքից՝ ծովն Պոնտոսի, և հարավից՝ ծովն Օրեթի[11], իսկ հյուսիսից՝ լեռն Կովկասի[12]:*

*Սակայն նրա որդիներից ութ մարդ հայտնի դարձան, որպես հզոր ու անվանի հսկաներ, որոնց անուններն են. առաջինը կոչվում էր Հաոս[13], երկրորդը՝ Քարթլոս երրորդը՝ Բարդոս, չորրորդը՝ Մովական, հինգերորդը՝ Լեկան, վեցերորդը՝ Հերոս, յոթերորդը՝ Կավկաս, ութերորդը Էգրոս: Այս ութ (եղբայրները) հսկաներ էին: Սակայն Հաոսը ամենքից առավել հսկա էր, քանզի նրա նմանը երբեք չի եղել ոչ ջրհեղեղից առաջ և ոչ էլ հետո՝ մարմնով, ուժով ու քաջությամբ: Բայց Արարատի և Մասիսի երկիրն այլևս չէր կարողանում տեղավորել (նրանց, ուստի) Թարգամոսը բաժանեց իր երկիրը և տոհմը այս ութ հսկաների միջև. իր տոհմի կեսը և երկրի լավագույն կեսը տվեց Հաոսին, իսկ այս յոթին տվեց իրենց բաժինը ըստ արժանիքների. տարավ այդ յոթին հյուսիսային կողմը և բաժանեց երկիրն ըստ նրանց արժանիքների: Քարթլոսին տվեց և նշեց սահմանը. արևելքից՝ Հերեթը և Բերդուջ գետը[14], արևմուտքից՝ ծովն Պոնտոսի, հարավից՝ լեռը, որը գտնվում է Բերդուջ գետի ակունքում և լեռը, որը ձգվում է դեպի արևմտյան կողմը, որից սկիզբ առնող գետը հոսում է դեպի հյուսիս և լցվում Մտկվարի գետը[15], որը հոսում է Կղարջքի և Տաոի[16] միջև գտնվող լեռից մինչև ծովը, և հյուսիսից՝ սահմանն է Ղադոն[17], փոքր լեռը, որը ճյուղավորվում է Կովկասից և հասնում է Ղադոյի եզրը, որին այժմ Լիխի են կոչում: Եվ այս սահմանների միջև (եղած) ամենը տվեց Քարթլոսին:*

*Իսկ Բարդոսին տվեց Մտկվարից հարավ, Բերդուջ գետից մինչև Մտկվարի և Ռախսի[18] միախառնման վայրը: Այս Բարդոսը կառուցեց Բարդավ քաղաքը[19] և բնակվեց այնտեղ:*

*Իսկ Մովականին տվեց Մտկվարից հյուսիս, Փոքր Ալազանի[20] գետաբերանից մինչև ծովը: Եվ սա կառուցեց Մովականեթ քաղաքը և հաստատվեց այնտեղ:*

*Իսկ Հերոսին տվեց Մտկվարիից հյուսիս գտնվող երկիրը, Փոքր Ալազանի գետաբերանից մինչև Տղետբա (վայրը), որին այժմ Գուլգուլ են կոչում: Եվ այս Հերոսը սկզբնապես կառուցեց քաղաք երկու Ալազանների միախառնման վայրում, և իր անվամբ կոչեց Հերեթ: Եվ այդ պատճառով են Հերեթին Հերեթ կոչում: Եվ այժմ այդ վայրը կոչում են Խորանթ:*

*Իսկ Էգրոսին տվեց ծովի եզրը գտնվող երկիրը, և նշեց սահմանը. արևելքից՝ փոքր լեռը, որին այժմ Լիխի են կոչում, արևմուտքից՝ ծովը, (հյուսիսից)՝ Փոքր Խազարեթի գետը[21], որտեղ եզերվում է Կովկասի ծայրը: Իսկ այս Էգրոսը կառուցեց քաղաք և իր անվամբ կոչեց Էգրիսի[22]: Այժմ այդ վայրը կոչում են Բեդիա[23]:*

*Իսկ Կովկասից հյուսիս Թարգամոսի վիճակը (բաժինը) չէր, այլև ոչ էլ մարդ կար Կովկասից հյուսիս, և անմարդաբնակ էր այդ երկիրը՝ Կովկասից մինչև մեծ գետը, որը թափվում է Դարուբանդի ծովը[24]:*

*Այդ իսկ պատճառով բազում հսկաներից դուրս հանեց երկու հսկայի՝ Լեկանին և Կավկասին: Եվ տվեց Լեկանին Դարուբանդի ծովից մինչև Լոմեկ գետը, հյուսիսից մինչև Մեծ Խազարեթի գետը: Եվ տվեց Կավկասին Լոմեկ գետից մինչև Կովկասի եզրը՝ արևմուտքում:*

*Իսկ Հաոսը բնակություն հաստատեց իր հոր՝ Թարգամոսի բնակավայրում, և տիրեց երկրին՝ հյուսիսից, ինչպես նշել եմ, հարավից՝ Օրեթի լեռից սկսած, արևելքից՝ մինչև ծովը Գուրգանի, և արևմուտքից մինչև ծովը Պոնտոսի: Եվ այս յոթ հսկաների կառավարիչն ու տերը Հաոսն էր: Եվ այս բոլորը հպատակ էին Հաոսին: Եվ այս ութ հսկաներն էլ ծառայում էին Նեբրոթ[25] հսկային, որը առաջին թագավորն էր ողջ աշխարհի:*

*Սրանից հետո մի քանի տարի անց, կանչեց Հաոսը այդ յոթ հսկաներին, ժողովեց և ասաց նրանց. «Բարձրյալն աստված շնորհել է մեզ զորություն և բազմություն մեր տոհմին. արդ, օգնությամբ արարչի չլինենք (այլևս) ոչ ոքի ծառա, և ոչ ոքի չծառայենք բացի արարիչ աստծուց»: Հավատացին այդ յոթ հսկաները և հաստատեցին այդ խորհուրդը, և ապստամբեցին Նեբրոթի դեմ և այլևս հարկ չտվեցին: Եվ դիմեցին մի քանի այլ տոհմերի, և երկմտեցին նաև այլ տոհմերը:*

*Այնժամ զայրացավ Նեբրոթը, ժողովեց իր հսկաներին և բոլոր նրանց, ում հպատակվում էին նրա զորքերը, և ելավ Թարգամոսյանների դեմ: Իսկ Հաոսը կանչեց յոթ հսկաներին և Թարգամոսյանների բոլոր տոհմականներին: Եվ օգնություն ցույց տվեցին նաև արևմտյան այլ և այլ տոհմեր. ժողովեց այս բոլորին Հաոսը և կանգնեց Մասիսի ստորոտում: Եվ երբ մոտեցավ Նեբրոթը*

*Աղարբադագան երկրին[26], կանգ առավ այնտեղ, ուղարկեց վաթսուն հսկաների և նրանց հետ հզոր զորք՝ Թարգամոսյաններին կարգի կոչելու համար:*

*Իսկ երբ Նեբրոթի զորքը մոտեցավ, այնժամ Հայոսի եղբայրները՝ այն յոթ հսկաները դիմավորեցին (նրանց) հզոր զորքով: Իսկ Հայոսը հզորագույն զորքով կանգնեց ետևում՝ թիկունքում: Տեղի ունեցավ նրանց միջև կատաղի ճակատամարտ, որը նմանվեց օդի սաստկությանը: Քանզի նրանց ոտքերի փոշին՝ թանձր ամպի, նրանց զրահի փայլատակումը՝ երկնքի կայծակի, նրանց գոչյունները՝ որոտման ձայնի, նրանց նետերի բազմությունը և քարերի արձակումը, խիտ կարկուտի, և նրանց հեղումն արյան՝ կարկուտների հեղեղների էր նման: Ճակատամարտը նրանց միջև սաստկացավ, և երկուստեք անթիվ կոտորվեցին:*

*Իսկ Հայոսը կանգնած էր հսկաների թիկունքում, քաջալերում էր և մխիթարում ահարկու ձայնով, որ նման էր կայծակի ճայթյունին: Այնժամ հաղթեցին Թարգամոսյանները և կոտորեցին Նեբրոթի այն հսկաներին ու նրանց զորքին: Ապա Թարգամոսյան այս յոթ հսկաները՝ Քարթլոսը, Բարդոսը, Մովականը, Հերոսը, Լեկանը, Կավկասանը, Էգրոսը, սրանք ողջ մնացին, առանց վիրավորվելու, և հաղթանակած փառաբանում էին աստծուն:*

*Իսկ երբ լսեց Նեբրոթը, բարկացավ և չարժվեց նրանց դեմ իր ողջ ուժով: Բայց Հայոսը չուներ Նեբրոթի զորքերի չափ զորք. ամրացավ նա Մասիսի քերծերում: Նեբրոթը մոտեցավ ցածի կողմից, և զինված էր նա ոտից մինչև գլուխ երկաթով ու պղնձով: Եվ բարձրացավ մի սարի վրա, որպեսզի խոսի Հայոսի հետ և պահանջում էր վերստին հպատակվել իրեն՝ գալ իր մոտ կամովին: Բայց Հայոսը դիմեց իր հսկաներին. «Ամրացրեք իմ թիկունքի կողմը, որ Նեբրոթին ընդառաջ գնամ»: Եվ գնաց ու դեմ հանդիման մոտեցավ Նեբրոթին, և արձակեց նետը ու զարկեց Նեբրոթի կրծքին, նետը պղնձյա տախտակն անցնելով, դուրս եկավ թիկունքից: Այնժամ վայր ընկավ Նեբրոթը, և նրա բանակը փախուստի դիմեց: Եվ ձերբազատվեցին Թարգամոսյան տոհմերը: Այնժամ Հայոսը իրեն արքա հռչակեց իր եղբայրների և այլ մերձակա սահմանակից տոհմերի (ցեղերի) վրա: Իսկ այս յոթ եղբայրները գնացին՝ յուրաքանչյուրն իր երկիրը և հպատակ էին Հայոսին:*

*1. **Ռանեը** – աղվանների անվանման ձևերից մեկը, որը ծագել է երկրի (Աղվանքի) Առան անունից:*

*2. **Մովականներ** – աղվանական ցեղերից մեկի անունը, որը, ըստ երևույթին, համապատասխանում է անտիկ հեղինակների մեկի կամ մյուսի ցեղին, որին նրանք տեղադրում էին պատմական Կովկասյան Ալբանիայի տարածքում:*

*3. **Հերացիներ** – կովկասյան ցեղ, որը բնակվում էր պատմական Աղվանքի ծայր արևմտյան սահմանագծում՝ Ալազանի և Իորի գետերի ավազանում:*

*4. **Լեզգիներ** – Լեոնտի Մրովելին այս անվան տակ ճանաչում է Դաղստանի տարածքում բնակվող բոլոր ցեղերին:*

*5. **Եգերներ** – քարթվելական ցեղեր, որոնք բնակվում էին վրացական հեղինակների էգրիսի, այսինքն՝ բյուզանդական աղբյուրների Լազիկա երկրում:*

*6. **Կովկասեցիներ** – Լեոնտի Մրովելին այս հավաքական էթնոնիմի տակ հասկացել է Հյուսիսային Կովկասում բնակվող բոլոր ցեղերին:*

*7. Բնագրում՝ Թարգամոս, պետք է հասկանալ Թորգոմ:*

*8. Հին Կտակարանի ազգացանկում Թորգոմը դիտվում է Գոմերի որդին, իսկ Մովսես Խորենացու մոտ պահպանված ազգացանկում նա համարվում է Գոմերի թոռը և Թիրասի որդին:*

*9. Պետք է լինի Արարադի (Կորդվաց լեռներ) և Մասիսի միջև:*

*10. Այսինքն՝ Վրկանից (Կասպից) ծովը:*

*11. **Ծովն Օրեթի** – պետք է ուղղել՝ «Լեռն Օրեթի», որը Ն. Ադոնցի կարծիքով տեղադրվում է Մեղիայի տարածքում (**Н. Адонц,** Армения в эпоху Юстиниана,СПб., 1908, էջ 31–32):*

*12. Բնագրում՝ Կովկասիա: Մրովելին նկատի ունի Գլխավոր Կովկասյան լեռնաշղթայի կենտրոնական մասը, այսինքն՝ էլբրուսը:*

*13. Խոսքը Հայոց անվանադիր նախնի Հայկի մասին է:*

*14. Այսինքն՝ Դեբեդ գետը:*

*15. Խոսքը Կուր գետի մասին է:*

*16. Այսինքն՝ Տայքը:*

*17. **Ղաղո** – Սուրամյան լեռնաշղթայի անվանումներից մեկը:*

*18. Այսինքն՝ Երասխ (Արաքս) գետը:*

*19. Խոսքը Աղվանքի մայրաքաղաք Պարտավի մասին է: Այստեղ Բարդոսը հանդես է գալիս որպես աղվանական ցեղերից մեկի անվանադիր:*

*20. Փոքր Ալազան կոչվել է Իորի գետը:*

*21. **Փոքր Խազարեթի գետ** – այստեղ Մրովելին նկատի ունի Կուբան գետը:*

*22. Խոսքը Եգերք-Կողքիսի մասին է:*

*23. **Բեդիա** – քաղաք միջնադարյան Աբխազիայում, որի ավերակներն այժմ գտնվում են Օչամչիրայի շրջանում:*

*25. Հայկական ավանդության Բելն է: Աստվածաշնչում հիշատակված է Քամյան Քուշի որդի Նեբրովթ անունով (տե՛ս 21-րդ էջ, ծան. № 15):*

*26. Այսինքն՝ Ատրպատական:*

## ՀՈՒՆԱԿԱՆ ԱՌԱՍՊԵԼԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

*Հայ ժողովրդի ծագման մասին գոյություն ունի նաև հունական մի առասպել, որն իր «Աշխարհագրության» մեջ բերել է Ստրաբոնը:*

*Հույն նշանավոր պատմագիր ու աշխարհագիր Ստրաբոնը ծնվել է Ք. ա. մոտ 63 թ. Պոնտոսի Ամասիա քաղաքում, բարձրաշխարհիկ ընտանիքում: Սովորել է Նյուսայի և Հռոմի ճարտասանական դպրոցներում և ստացել փիլիսոփայական կրթություն: Երիտասարդության տարիներին շատ է ճանապարհորդել, եղել է նաև Հայաստանում: Ստրաբոնը գրել է «Պատմական հիշատակարաններ» վերտառությամբ մի աշխատություն՝ բաղկացած 43 գրքից, սակայն այն մեզ չի հասել: Մոտավորապես Ք. ա. 7 թ. նա սկսում է աշխատել հռչակավոր «Աշխարհագրության» վրա և ավարտում այն մահից քիչ առաջ՝ Ք. հ. 20 թվականին: «Աշխարհագրությունը» բաղկացած է 17 գրքից: Ստրաբոնը այստեղ, փաստորեն, շարադրում է Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի երկրների ֆիզիկական ու պատմական աշխարհագրությունը, ինչպես նաև հաղորդում է բազմահարուստ տեղեկություններ այդ երկրների քաղաքական պատմության ու հասարակական հարաբերությունների վերաբերյալ:*

*Ստրաբոնի «Աշխարհագրությունը» անգնահատելի ու ճշմարտապատում աղբյուր է նաև Հայաստանի պատմության, աշխարհագրության, մշակույթի ուսումնասիրության համար, որոշ դեպքերում նրա հաղորդած տեղեկությունները եզակի են: Այս հանգամանքն էլ ավելի է բարձրացնում «Աշխարհագրության» արժեքը, քանզի առանց դրա հնարավոր չէ բավարար չափով կողմնորոշվել Հայաստանի Ք. ա. II–I դդ. պատմության շատ հարցեր ուսումնասիրելիս:*

*Ստրաբոնն անդրադարձել է նաև հայ ժողովրդի ծննդաբանության հարցին և համերաշխվել իր ժամանակներում տարածում ստացած այն վարկածին, թե իբր արմեններն ունեն թեսսալական ծագում և, որ նրանց անվանադիր նախնին հանդիսացել է Արմենոս Թեսսալացին: Ինչպես հաղորդում է աշխարհագիրը, նա այս պատումը վերցրել է Ալեքսանդր Մակեդոնացու զորավարներ Կյուրսիլոս Փարսալացու և Մեդիոս Լարիսացու ինչ-որ աշխատությունից: Առասպելի համաձայն, արգոնավորդ Արմենոս Թեսսալացին իր ուղեկիցների հետ Կողքիսից (Կոլխիդայից) անցնելով Հայաստան, հաստատվել է այստեղ և երկրին տվել իր անունը՝ Արմենիա, իսկ ժողովրդին՝ արմեններ: Սակայն հայտնի է, որ արգոնավորդների առասպելը ձևավորվել է մինչհոմերոսյան դարաշրջանում, մոտավորապես Ք. ա. XI–X դարերում, այ-*

սինքն՝ այն ժամանակ, երբ դեռևս Արմենիա պետական միավորումը գոյություն չուներ, հետևաբար, Արմենոսի անունից չէ, որ պետք է բխեցնել «Արմենիա» հասկացությունը, որն ավելի ուշ շրջանի (մոտ Ք. ա. VII–VI դդ.) բովանդակություն է արտահայտում: Ուսումնասիրողները գտնում են, որ առասպելի բանաբարները վերոնշված երկու հույն զորականներ են: Սրանք մի առիթով այցելելով Հայաստան՝ ուշադրություն են դարձնում Հայաստանի և իրենց հայրենի Թեսսալիայի որոշ տեղանունների համահնչյունության և այլ զուգադիպող երևույթների վրա ու հանգում այն եզրակացության, որ հայերն ունեն թեսսալական ծագում: Նրանք փորձում են նաև բացատրել հայերի «արմեն» անվանումը և բռնազբոսիկորեն այն կապում են արգոնավորդ Արմենոս Թեսսալացու հայտնի անվան հետ: Այս բոլորից բխում է, որ հայ ժողովրդի ծագման մասին սույն հունական առասպելը զուրկ է պատմական հենքից, որ այն հորինվել է հենց Ալեքսանդրի արշավանքերի ժամանակ, երբ հույները նման առասպելներ հորինել էին նաև պարսիկների, մարերի և արևելյան այլ ժողովուրդների Բալկանյան թերակղզուց գաղթած լինելու վերաբերյալ և, որ նման առասպելի ստեղծումն ունեցել է իր քաղաքական դրդապատճառները:

Ստրաբոնից ստորև տրված հատվածները բերում ենք Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ, որը կատարված է «Strabonis Geographica, recogn. A. Meinece, vol. I–III, Lepsiae, 1915–1925» հրատարակությունից:

## ՍՏՐԱԲՈՆ

### ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ, XI, 4

9. Զրուցում են, թե Յասոնը[1] Արմենոս Թեսսալացու[2] հետ դեպի Կոլխերը նավարկելիս առաջացել է մինչև Կասպից ծով և անցել է Իբերիան և Ալբանիան և Արմենիայի ու Մեդիայի շատ մասերը, ինչպես վկայում են Յասոնականքը[3] և բազում այլ հուշարձաններ: (Պատմում են նաև), թե Արմենոսը եղել է Արմենիոն քաղաքից, որը գտնվում էր Բոյբեիս լճի մոտ, Փերեի և Լարիսայի[4] միջև և, թե նրա հետ եղողները բնակեցրել են Ակիլիսենեն և Սյուսպիրիտիսը[5], մինչև Կալաքենե և Ադիաբենե[6]: Սա էլ իր անունը թողել է Արմենիային:

*12. Այս ազգի (արմենների) մասին կա այսպիսի մի հնախոսություն: Արմենոսը թեսսալական Արմենիոն քաղաքից, որը գտնվում է Փերեի և Լարիսայի միջև, Բոյբեիսի[7] մոտ, ինչպես ասվեց, Յասոնի հետ արշավեց Արմենիա: Կյուրսիլոս Փարսալացին և Մեդիոս Լարիսացին[8], որոնք արշավել են Ալեքսանդրի հետ, (և) նրանց հետ եղողները ասում են, թե երկիրը նրա անունից կոչվել է Արմենիա: (Ասում են) նաև, թե Արմենոսի հետ եղողներից ոմանք բնակեցրել են Ակիլիսենեն, որը նախապես Սոփենեի[9] (իշխանության) տակ էր, մյուսները՝ Սյուսպիրիտիսը[10] մինչև Կալաքենե և Ադիաբենե, Հայաստանի սահմաններից դուրս: Ասում են նաև, թե հայկական զգեստը թեսսալական է, ինչպես այն երկար ներքնազգեստները[11], որ ողբերգությունների մեջ թեսսալական են կոչում և գոտևորում կրծքի վրա, ինչպես և այն ռազմազգեստները, որով ողբերգակները պատկերում են թեսսալացիներին: ... Յասոնի արշավանքի մասին վկայում են նաև Յասոնականքը, որոնցից մի քանիսը կառուցել են իշխանները՝ շատ նման Յասոնի այն տաճարին, որ կառուցել է Պարմենիոնը[12] Աբդերայում[13]:*

*1. **Յասոն** – թեսսալացի արքա էսոնի որդին: Ըստ դիցաբանության, «Արգո» նավով ճանապարհորդեց Կոդքիս (Կոլխիդա), ոսկեգեղմը բերելու:*

*2. **Արմենոս Թեսսալացի** – առասպելական անձնավորություն, Յասոնի զինակիցը, արգոնավորդների արշավանքի մասնակից: Ըստ առասպելի, Յասոնի մահից հետո հավաքեց նրա ցրված զորքերը և անցնելով Հայաստան, բնակություն հաստատեց Եկեղիք ու Սպեր գավառներում, որից էլ, իբրև թե ծագել է երկրի Արմենիա անվանումը:*

*3. Այսինքն՝ Յասոնի պաշտամունքին նվիրված տաճարներ և սրբավայրեր:*

*4. **Փերե** և **Լարիսա** – քաղաքներ Կենտրոնական Հունաստանի Թեսսալիա մարզում:*

*5. Այսինքն՝ Եկեղիք և Սպեր գավառները:*

*6. Այսինքն՝ Տիգրիսի միջին հոսանքի շուրջն ընկած տարածքը և Ասորեստանի հին մայրաքաղաք Կալխուի շրջակայքը:*

*7. Նույնանուն քաղաք և լիճ Թեսսալիայում:*

*8. Ն. Ադոնցի կարծիքով, Կյուրսիլոս Փարսալացին և Մեդիոս Լարիսացին, որոնք Հայաստան էին ուղարկվել Անտիգոնոսի կողմից Հայոց Արոանդես Թագավորից օգնություն ստանալու խնդրանքով, արմենների և Արմենիայի մասին թողել են մի գրվածք, որի փշրանքներն հասել են մեզ Ստրաբոնի միջոցով:*

*9. Այսինքն՝ Ծոփք:*

*10. **Սյուսպիրիտիս** – այստեղ, ըստ երևույթին, խոսքը գնում է ոչ թե Սպեր գավառի, այլ Շուբրիայի (շումերերեն՝ Սու-բիր, ակկադերեն՝ Սուբարտու), այսինքն՝ պատմական Աղձնիք գավառի մասին:*

*11. Բնագրում՝ քիտոն:*

*12. Պարմենիոնը Ալեքսանդր Մակեդոնացու ամենաաչքի ընկնող զորավարներից մեկն էր:*

*13. Քաղաք Թրակիայում:*

## ՀԵՐՈԴՈՏՈՍԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԵՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ



*Հերոդոտոս*

***Հերոդոտոսը հին հունական պատմագրության ամենաականավոր դեմքն է և իրավամբ վաստակել է «Պատմահայր» պատվատիտղոսը: Ծնվել է մոտ Ք. ա. 484 թվականին, Փոքր Ասիայի հարավ-արևմուտքում գտնվող Հալիկառնաս քաղաքում: Վաղ հասակից պայքարել է բռնապետական կարգերի դեմ, որի պատճառով հալածվել է և ստիպված լքելով հայրենի քաղաքը՝ բնակություն հաստատել Սամոս կղզում: Մի քանի տարի նա ապրել է նաև Աթենքում, որտեղ մերձեցել է Պերիկլեսին ու Սոփոկլեսին: Ենթադրվում է, որ Հերոդոտոսը մահացել է Աթենքում, մոտավորապես 431-425 թվականների միջև: Իր գաղափարախոսությամբ ու քաղաքական հայացքներով Հերոդոտոսը չափավոր ստրկատիրական դեմոկրատիայի կողմնակիցն էր: Պատմահայրը շատ է ճանապարհորդել: Շուրջ տասը տարվա ընթացքում (455-445 թթ.) նա եղել է բազմաթիվ երկրներում՝ Փոքր Ասիայի պետություններում, Պարսկաստանում, Բաբելոնում, Պաղեստինում, Փյունիկիայում, Եգիպտոսում, Լիբիայում, Հունաստանում, Էգեյան ծովի կղզիներում, Սիցիլիայում, Բոսֆորում և այլուր: Տեսածի և լսածի հիման վրա նա գրել է իր հռչակավոր «Պատմություն» աշխատությունը, որը հետագայում Ալեքսանդրիայի գիտնականները բաժանել են ինը գրքերի: Հերոդոտոսի երկասիրությունը պարունա-***

*կում է հսկայական քանակությամբ պատմական, ազգագրական, աշխարհագրական նյութեր՝ հին աշխարհի երկրների պատմության վերաբերյալ: Աշխատության առանցքը չնայած հունա-պարսկական պատերազմների նկարագրությունն է, սակայն այստեղ մեծ տեղ է հատկացված նաև Ասորեստանի, Բաբելոնի, Պարսկաստանի, Եգիպտոսի, Սկյութիայի և այլ պետությունների, ցեղերի ու ժողովուրդների պատմությանը:*

*Հերոդոտոսի երկում մեծ հետաքրքրություն ներկայացնող վկայություններ կան նաև հին Հայաստանի պատմական աշխարհագրության, տնտեսության ու հասարակական-քաղաքական հարաբերությունների մասին: Այստեղից ենք տեղեկանում, որ Ք. ա. V դարում Հայաստանը բաժանված էր Աքեմենյան XIII և XVIII սատրապությունների միջև, ինչպես նաև Հայաստանից գանձվող հարկերին, տնտեսությանը և առևտրին վերաբերող բազմաթիվ հարցերի մասին:*

*Հերոդոտոսից բերված հատվածները տրվում է Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ, որը կատարված է* «**Herodotus**, Historiarum libri IX, 1-3. Cambrige, Mass.-London, 1946-1960 (Loeb Library)» *հրատարակությունից:*

## ՀԵՐՈԴՈՏՈՍ

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### Գիրք VII

*73. Փռյուգիացիների[1] սպառազինումը բավականին նման էր պափլագոնիականին[2], միայն մի փոքր տարբերությամբ: Փռյուգիացիները, ինչպես մակեդոնացիներն են ասում, երբ իրենց հարևանությամբ ապրում էին Եվրոպայում՝ անվանվում էին բրիգներ: Իսկ Ասիա վերաբնակվելուց հետո[3], նրանք երկրի հետ միասին փոխեցին և իրենց անունը՝ կոչվելով փռյուգիացիներ[4]:*

*Արմենները, լինելով փռյուգիական գաղութաբնակներ[5], զինված էին փռյուգիացիների նման: Այս երկուսի առաջնորդն էր Արտոքմեսը, որն ամուսնացած էր Դարեհի[6] դստեր հետ:*

*1. Հնդեվրոպական ժողովուրդ, որը Փոքր Ասիա էր անցել Թրակիայից:*

*2. Պափլագոնացիները բնակվում էին Փոքր Ասիայի մերձսևծովյանափերին՝ ներկայիս Սինոպից հարավ-արևմուտք:*

*3. Փռյուգիական ցեղերի տեղաշարժը Բալկաններից դեպի Փոքր Ասիա կատարվել է մի քանի ալիքներով՝ Ք. ա. XIII–XII դարերում:*

*4. Փոքր Ասիայում փռյուգիացիները բնակվում էին Լիդիայի և Կապադովկիայի միջև:*

*5. Հիմք ընդունելով Հերոդոտոսի սույն հաղորդումը՝ պատմագրության մեջ ժամանակին զարգացվել է Հայ ժողովրդի ծագման փռյուգիական վարկածը: Ըստ այդ տեսակետի, Հայերի հնդեվրոպական նախնիները, որոնք բնակվում էին Սանգարիա գետի ափին և Արգեոս լեռան շրջակայքում՝ ներկայիս Անկարայից արևմուտք, փռյուգիացիների ճնշման ներքո շարժվել են դեպի Արևելք՝ Անտիտավրոսի լեռները և Հալիս գետի վերին հոսանքի շրջանը (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. I, Երևան, 1971, ԳԱ Հրատարակչություն, էջ 243):*

*6. Խոսքը Աքեմենյան տերության թագավոր Դարեհ I Վշտասպյանի (522–486) մասին է:*





**Բրոնզե թիթեղ՝ Խալդիի պաշտամունքի տեսարանով (Վան)**



## ԲԱԺԻՆ ԵՐԿՐՈՐԴ

# ՀՆԱԳՈՒՅՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀՈՒՄ

## ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԵԴԵՄԻ ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՋՐՀԵՂԵՂԻ ՄԱՍԻՆ

*Աստվածաշունչը տարբեր ժամանակներում գրված տարալեզու և տարաբնույթ երկերի ժողովածու է (Ք. ա. XIII – Ք. հ. II դդ.)։ Այն բաժանվում է երկու հիմնական մասերի՝ Հին Կտակարան (39 գիրք) և Նոր Կտակարան (27 գիրք)։ Աստվածաշունչը, չնայած հիմնականում պարունակում է հրեական և քրիստոնեական կրոնների դավանանքը, առասպելներն ու դոգմաները, սակայն նրանում մեծ տեղ են գրավում նաև պատմական, կենցաղային-ազգագրական, սոցիալ-տնտեսական, իրավական, փիլիսոփայական, կրոնաբարոյական և սիրային-լիրիկական բնույթի նյութեր։ Իր կրոնական բովանդակությամբ հանդերձ, Աստվածաշունչը նաև կարևոր աղբյուր է Մերձավոր Արևելքի երկրների (այդ թվում և Հայաստանի) վաղ անցյալի ուսումնասիրության համար։*

*Աստվածաշունչը թարգմանվել է աշխարհի գրեթե բոլոր լեզուներով։ Հայերեն թարգմանվել է V դարում՝ Մեսրոպ Մաշտոցի, Սահակ Պարթևի և նրանց աշակերտների կողմից։ Հայերեն թարգմանությունն այնքան կատարյալ ու հմտալից է եղել, որ այն համարվել է «Թարգմանությունների թագուհի»։ Աստվածաշունչը հայերեն տպագրվել է մի քանի անգամ։*

*Ստորև ներկայացվում են Աստվածաշնչի տեղեկությունները նախապատմական ժամանակների մասին, որոնցում Հայկական լեռնաշխարհը ներկայանում է որպես արարչագործության վայր՝ Եդեմդրախտավայր, որտեղ գտնվել են իմացությունը և անմահությունը*

*խորհրդանշող ծառերը, Արևելքի (իմա՝ արևի ելման) երկիր, համաշխարհային ջրհեղեղից հետո մարդկության փրկության ու վերածննդի երկիր, որտեղ կնքվեց Աստծո և մարդկության հավիտենական ուխտը:*

***Բերված հատվածները տրվում են ըստ Աստվածաշնչի արևելահայերեն նոր թարգմանության (Ս. Էջմիածին, 1999):***

1.

*ԾՆՆԴՈՑ, գլուխ Բ*

*7. Տեր Աստված մարդուն ստեղծեց երկրի հողից, նրա դեմքին կենդանության շունչ փչեց, և մարդն եղավ կենդանի էակ*[1]*:*

*8. Աստված դրախտ տնկեց Եդեմում՝ արևելյան կողմում*[2]*, և այնտեղ դրեց իր ստեղծած մարդուն: 9. Տեր Աստված երկրից բուսցրեց նաև ամեն տեսակի գեղեցկատեսիլ ու համեղ մրգեր տվող ծառեր, իսկ կենաց ծառը՝ բարու և չարի գիտության ծառը*[3]*, տնկեց դրախտի մեջտեղում: 10. Գետ էր բխում Եդեմից, որպեսզի ոռոգեր դրախտը, և այնտեղից բաժանվում էր չորս ճյուղերի: 11. Մեկի անունը Փիսոն էր..., 13. Երկրորդ գետի անունը Գեհոն է..., 14. Երրորդ գետը Տիգրիսն է...,. Չորրորդ գետը Եփրատն է*[4]*:*

*1. Մարդու՝ կավից ստեղծվելու և «կյանքի շունչ» ստանալու այուժեն առկա է դեռևս շումերա-աքադական աղբյուրներում, ընդ որում, արարիչ աստվածը Հայա-Էնկին է, իսկ արարչությունը տեղի է ունենում Հարալի երկրում, որը տեղորոշվում է Հայկական լեռնաշխարհում (տե՛ս* ***Ա. Մովսիսյան****, Սրբազան լեռնաշխարհը. Հայաստանը Առաջավոր Ասիայի հնագույն հոգևոր ընկալումներում, Երևան, 2006, էջ 22-32՝ հղված աղբյուրներով հանդերձ):*

*2. Եդեմի հիշատակվելն «արևելյան կողմում» արժանի է հատուկ ուշադրության: Ծննդոց գրքի մեկ այլ մասում պատմվում է, որ Նոյի տապանը փրկվեց Արարատի լեռներում (իմա՝ Հայաստանում), հետո դեռևս մեկ լեզվով խոսող մարդիկ «արևելքից» գնացին Սենաարի երկիր և որոշեցին կառուցել երկնահաս «բաբելոնյան աշտարակը» (****Ծննդոց, ԺԱ****, 1-9): Երկու դեպքում էլ Հայաստանը ներկայացվում է իբրև արևելքի երկիր, մինչդեռ, այն Հին Կտակարանը գրի առած հրեաների երկրից հյուսիս էր գտնվում: Նույն գրքի մեկ այլ դրվագում երրորդ անգամ կրկնվում է միևնույն պատկերացումը. «Հակոբը վեր կացավ գնաց արևելյան երկիրը... Հակոբը հարցրեց նրանց. «Եղբայրնե՛ր, որտեղի՞ց եք»: Նրանք պատասխանեցին. «Խառանից ենք...» (****Ծննդոց, ԻԹ****, 1-5): Հակոբը*

*Պաղեստինի հարավային Բերսաբե քաղաքից ճանապարհվում է Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմտյան սահմանի հարևանությամբ գտնվող Խառան քաղաքը, որը, չնայած հյուսիսում գտնվելուն, կոչվում է «արևելքի որդիների երկիր»: Բերված փաստերը ցույց են տալիս, որ գոնե Ծննդոց գրքում Հայկական լեռնաշխարհը որոշ սահմանամերձ շրջանների հետ համարվել է «արևելքի երկիր»: Նման պատկերացումն առկա է բազմաթիվ այլ աղբյուրներում ևս: Միջագետքյան «Գիլգամեշ» էպոսում դրախտի ու անմահության երկրի սահմանը Մաշու լեռներն են, ուր տեղի էին ունենում արևածագն ու մայրամուտը: Միջագետքից ու Պաղեստինից հյուսիս տարածվող Հայկական լեռնաշխարհը համարվել է «արևելք» ոչ թե բառի աշխարհագրական կողմ ցույց տվող, այլ «արևի ելքի երկիր» իմաստով: Հետագայում նախնական իմաստը մոռացվել է, և բառն ընկալվել է աշխարհագրական նշանակությամբ:*

*Հայկական լեռնաշխարհի՝ արևի հանգրվանը լինելու մասին պատկերացումը պահպանվել է նաև խեթական աղբյուրներում, որոնց համաձայն, արեգակը ծա-գում էր «Արևելյան ծովից»՝ Վանա լճից: Դա լիովին համահունչ է հայկական ավանդազրույցներին, որոնց համաձայն՝ արևի ոսկյա ննջարանը գտնվում էր Վանա լճի հատակին, որտեղից ամեն առավոտ ելնում և ուր ամեն գիշեր վերադառնում էր ցերեկվա լուսատուն: Հայաստանի՝ արևելքի երկիր (ոչ աշխարհագրական իմաստով) լինելու մասին չափազանց հետաքրքիր տեղեկություն է պահպանել «Սասնա ծռեր» (կամ «Սասունցի Դավիթ») էպոսը, որում Ծովինարը որդիներին խորհուրդ է տալիս Բաղդադից փախչել Հայաստան՝ հետևյալ խոսքերով .*

**Փախե՛ք, գնացե՛ք Հայոց Թագավորի քաղաք:**
**Գիշեր պայծառ աստղն բռնեք նշան,**
**Ցերեկն էլ հարցուցե՛ք**
**Արևելից Թագավորի էրկիր:**

*(«Սասունցի Դավիթ», 1939, էջ 27):*

*Հայաստանը մեր էպոսում կոչվում է «Արևելքի Թագավորի երկիր», մի բնորոշում, որը կարող էր ծագել ու պահպանված լինել միայն և միայն հնագույն ժամանակներից:*

*Այն հանգամանքը, որ ինչպես Ծննդոց գրքի կարևորագույն դրվագներում (Եդեմ, Ջրհեղեղ և այլն), այնպես էլ հնագույն բազմաթիվ աղբյուրներում Հայաստանը հանդես է գալիս իբրև «արևելք», առիթ է տվել ենթադրելու, որ Նոր Կտակարանում ևս հիշատակվող «մոգերն արևելքից», որոնք առաջինը եկան ող - ջունելու Հիսուս Քրիստոսի ծնունդը, կարող էին լինել Հայաստանի քրմերը...*

*3. Կենաց և բարու ու չարի իմացության ծառերը խորհրդանշում էին ան -*

*մահուԹյունն ու իմաստուԹյունը: Անմահության ու իմաստության խորհուրդները Հայկական լեռնաշխարհի հետ են կապվում նաև հնագույն այլ աղբյուրներում (մանրամասն տե՛ս* ***Ա. Մովսիսյան****, Սրբազան լեռնաշխարհը, էջ 43–49):*

*4. Եդեմի չորս գետերից երկուսը հստակ են՝ Եփրատն ու Տիգրիսը, որոնք սկիզբ են առնում Հայկական լեռնաշխարհից: Մյուս երկուսի (Գեհոն և Փիսոն) վերաբերյալ ընԹացել են բազմաԹիվ բանավեճեր, որոնք մինչ օրս չեն մարել: Քանի որ Եդեմից սկիզբ առնող երկու հանրահայտ գետերը ծնունդ են առնում Հայկական լեռնաշխարհում, ուստի այնտեղ էլ գտնվել է Աստվածաշնչի Եդեմ-դրախտը: Դա համահունչ է նաև հնագույն միջագետքյան պատկերացումներին, որոնց համաձայն ևս արարչագործուԹյան կենտրոնը Հայկական լեռնաշխարհն է (մանրամասն տե՛ս* ***Ա. Մովսիսյան****, Սրբազան լեռնաշխարհը, էջ 7–16):*

2.

*ԾՆՆԴՈՑ, գլուխ Է*

*17. Երկրի վրա քառասուն օր ու քառասուն գիշեր ջրհեղեղ եղավ... 23. Աստված բնաջնջեց երկրի երեսին գտնվող ամեն մի էակ՝ մարդուց մինչև անասուն, սողուններից մինչև երկնքի Թռչունները: Նրանք վերացան երկրի երեսից: Կենդանի մնաց միայն Նոյը, նաև նրանք, որ նրա հետ տապանում էին: 24. Ջուրը հարյուրհիսուն օր ողողեց երկիրը:*

*ԾՆՆԴՈՑ, գլուխ Ը*

*1. Աստված հիշեց Նոյին, նրա հետ տապանում գտնվող բոլոր գազաններին, բոլոր անասուններին ու բոլոր Թռչուններին... 3. Ջուրը գնալով իջնում, քաշվում էր երկրի վրայից, և հարյուր հիսուն օր անց այն նվազեց: 4. ՅոԹներորդ ամսի քսանյոԹին տապանը նստեց Արարատ*[1] *լեռների վրա:*

*1. Աշխարհակործան ջրհեղեղի մասին պահպանված ավանդազրույցներում ա-ռանձնանում են առաջավորասիական ծագում ունեցող պատմուԹյունները, որոնք սյուժետային մանրամասներով առավել մոտ են իրար, և իբրև տապանի փրկուԹյան վայր դրանցում մատնանշվում է Հայկական լեռնաշխարհը (****Ա. Մովսիսյան****, Սրբազան լեռնաշխարհը, էջ 5–6, 39–43, 66–71 և հղված աղբյուրները): Տե՛ս նաև հաջորդ ենԹաբաժնում:*

# ՇՈՒՄԵՐԱ-ԱՔԱԴԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՑԵՂԵՐԻ ՈՒ ՊԵՏԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Հայաստանի հնագույն պատմության վերաբերյալ սկզբնաղբյուրներ են հայտնաբերվել ինչպես բուն լեռնաշխարհի տարածքում, այնպես էլ հին Առաջավոր Ասիայի գրեթե բոլոր գիր ունեցող երկրներում, ինչը խոսում է հնագույն ժամանակներում մեր երկրի՝ տարածաշրջանում ունեցած կարևոր դերակատարման մասին:*

*Հայաստանի պատմության մասին ամենավաղ տեղեկությունները հաղորդում են Միջագետքի հարավաբնակ շումերները, որոնց թողած սեպագիր արձանագրությունները վերաբերում են Ք. ա. III հազարամյակի սկզբից մինչև II հազարամյակի սկիզբն ընկած ժամանակահատվածի պատմական իրադարձություններին:*

*Շումերների մշակույթը (այդ թվում նրանց ստեղծած սեպագիրը), ժամանակի ընթացքում կողք-կողքի ապրելով, յուրացրեցին սեմական ծագում ունեցող աքադացիները, որոնք Միջագետքի նախ կենտրոնում, ապա հարավում հասան գերիշխանության՝ արձանագրելով իրենց ռազմարշավների պատմությունը: Աքադական սկզբնաղբյուրները Հայկական լեռնաշխարհի մասին տեղեկություններ են հաղորդում սկսած Ք. ա. XXIV դարից: Ընդ որում, Ք. ա. III հազարամյակի երկրորդ կեսի և II հազարամյակի սկզբի մի շարք բնագրեր զուգահեռաբար գրված են և՛ շումերերեն, և՛ աքադերեն:*

*Հայկական լեռնաշխարհի Ք. ա. III հազարամյակի պատմությունը շումերա-աքադական աղբյուրներում ուրվագծվում է Միջագետքի պատմությանը զուգահեռ: Միջագետքում Ք. ա. III հազարամյակի առաջին կեսին, մինչև Ք. ա. XXIV դարը, ժամանակ առ ժամանակ գերիշխանության են հասնում շումերական քաղաք-պետությունները, որոնցից Հայկական լեռնաշխարհի հետ են կապվում Ուրուկ քաղաքի առաջին և երրորդ դինաստիաները, որոնց վերաբերող բնագրերում հիշատակվում են Արատտա և Սուբուր (Սուբարտու) երկրանունները: Ք. ա. XXIV-XXIII դարերում Միջագետքը միավորվում է Աքադի դինաստիայի իշխանության ներքո, որը հայտնի է «Շումերի և Աքադի թագավորություն» անվամբ: Ք. ա. XXIII-XXII դարերում Միջագետքի վրա տարածվեց Հայկական լեռնաշխարհի 17 երկրների դաշինքի իշխանությունը, որը Կորդվաց աշխարհի հնագույն անվամբ հայտնի է որպես «Կուտիական» աշխարհակալություն: Ք. ա. XXII դարավերջից մինչև Ք. ա. XXI դարի վերջը Միջա-*

*գետքում իշխեց Ուրի երրորդ հարստությունը:*

*Շումերա-աքադական բնագրերի թարգմանությունը կատարել է Ա. Մովսիսյանը:*

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՋՐՀԵՂԵՂԻ ՄԱՍԻՆ ՇՈՒՄԵՐԱԿԱՆ ԲՆԱԳՐԵՐԸ

### 1.

*Համաշխարհային ջրհեղեղի մասին բազմաթիվ հիշատակումներ են պահպանվել տարբեր մայրցամաքներում ապրող ժողովուրդների ավանդազրույցներում (դրանց մեծագույն մասը տե՛ս* **Дж. Дж. Фрезер, Фольклор в Ветхом Завете, М., 1985, с. 63-159***): Մեծ ջրհեղեղի մասին գրի առնված հնագույն պատմությունը շումերականն է, որը գիտական աշխարհին հայտնի դարձավ 1914 թվականին: Մինչ այդ՝ 1872 թվականին, Ջ. Սմիթը հրատարակել էր ջրհեղեղի մասին բաբելոնյան (աքադական) պատումը՝ «Գիլգամեշ» էպոսի 11-րդ պնակիտը, որն իր մանրամասներով գրեթե նույնանում է Աստվածաշնչի պատմության հետ: Աստվածաշնչում փրկության վայրը Արարատի լեռներն են (***Ծննդոց***, *Ը, 1-4): Միջագետքյան և նրանից ծագող ավանդություններում Հայաստանն է հանդես գալիս որպես փրկիչ տարածք. դա ակնհայտ է նաև Բերոսոսի, Ալեքսանդր Բազմավեպի, Աբյուդենոսի, Հիերոնիմոս Եգիպտացու, Մնասեասի, Նիկողայոս Դամասկոսցու, Հովսեպոս Փլավիոսի, Եվսեբեոս Կեսարացու և այլոց հաղորդումներից (այս ամենի մասին տե՛ս Ա. Մովսիսյան, Սրբազան լեռնաշխարհը, էջ 5-6, 39-43, 66-71): Ուշագրավ է, որ ղուրանյան ջրհեղեղի պատմությունը ևս (նույնպես՝ առաջավորասիական ծագում ունեցող) Հայաստանի հարավը՝ Ջուդի լեռն է համարում փրկության վայրը. «Եվ ջուրը նվազեց, կատարվեց Աստծո դատաստանը, և այն (տապանը - Ա.Մ.) կանգ առավ Ջուդի լեռան վրա» (***Ղուրան***, 11, 47):*

*Ստորև ներկայացվում է 1914 թ. հայտնաբերված շումերական բնագիրը [The Deluge (tr. S. N. Kramer) in : Ancient Near Eastern Texts Related to the Old Testament (ed. by J. B. Pritchard), New Jersey, 1969, p. 42-44]:*

(Սկզբում վնասված է 37 տող)

*Մարդկային ցեղն իր կործանման (պահին) ես ...*
*Ես կվերադարձնեմ, Նինտու[1] ... իմ ստեղծածներին:*
*Ես կվերադարձնեմ ժողովրդին իմ բնակավայրերը,*
*Քաղաքներում նրանք տաճարներ կկանգնեցնեն՝ հանուն աստվածային օրենքների:*
*Ես նրանց ստվերը բարեբեր կդարձնեմ:*
*Նրանք սրբավայրերում կդնեն աղյուսները մեր տաճարների,*
*Նրանք սրբավայրերում կկանգնեցնեն տեղեր, որոնցից կառավարում ենք մենք:*
*Նա ուղղեց սրբազան ջրերը՝ կրակ հանգցնող,*
*Նա հաստատեց ծեսեր և աստվածային վսեմ օրենքներ,*
*Երկրի վրա նա..., նա զետեղեց այնտեղ...*
*Երբ Անը[2], Էնլիլը[3], Էնկին (Հայան)[4] ու Նինխուրսագը[5]*
*Ստեղծեցին սևագլուխ ժողովրդին[6],*
*Փարթամ բուսականությունը ծածկեց երկիրը,*
*Կենդանիները՝ հարթավայրի չորքոտանի (բնակիչները), հմտորեն ստեղծվեցին:*

(Վնասված է 37 տող)

*Երբ ... թագավորական իշխանությունն իջավ երկնքից,*
*Երբ բարձրացված պսակաթագն ու արքայական գահն իջան երկնքից,*
*Նա ստեղծեց ծեսեր ու վեհ աստվածային օրենքներ...,*
*Նա ստեղծեց հինգ քաղաք ... սրբավայրերում,*
*Նա տվեց նրանց անուններ և դարձրեց դրանք գլխավոր սրբատեղիներ:*
*Առաջինն այդ քաղաքներից՝ Էրեդուն, նա տվեց Նուդիմմուդին՝ առաջնորդին[7],*
*Երկրորդը՝ Բադ-Թիբիրուն, նա տվեց ...,*
*Երրորդը՝ Լարակը, նա տվեց Էնդուր-բիլ-խուրսագին,*
*Չորրորդը՝ Սիպարը, նա տվեց հերոսին, ում անունն է Ութու[8],*
*Հինգերորդը՝ Շուրուպակը, նա տվեց Սուդուին:*
*Երբ նա անուններ շնորհեց քաղաքներին և դրանք դարձրեց գլխավոր սրբավայրեր,*
*Նա բերեց...*
*Կարգադրեց մաքրել փոքր գետերը՝ նման...*

(Վնասված է 37 տող)

*Ջրհեղեղ...*
*Այդպես էր որոշված...*
*Այնժամ Նինտուն հեկեկաց, ինչպես ...,*
*Աստվածային Ինաննան*[9] *արտասվեց իր ժողովրդի համար,*
*Էնկին խորհրդակցեց ինքն իր հետ,*
*Անը, Էնլիլը, Էնկին ու Նինխուրսագը ...,*
*Աստվածները երկինքների ու երկրի արտաբերեցին անունն Անի ու Էնլիլի:*
*Այդժամ Զիուսուդրա արքան, պաշիշուն ...,*
*Կառուցեց ահռելի ...,*
*Հեզ, հնազանդ, բարեհաճությամբ նա ...,*
*Ամեն օր, անդադար նա ...,*
*Հիշելով բոլոր երազները՝ նա ...,*
*Երկինք ու երկիր կանչելով՝ նա ...,*
*... աստվածները, պատը ...,*
*Զիուսուդրան, կողքին կանգնելով, լսեց:*
*«Կանգնիր պատի մոտ, ինձնից ձախ ...,*
*Պատի մոտ ես քեզ խոսք կասեմ, ականջ դիր խոսքիս:*
*Լսիր իմ ցուցումները.*
*Ըստ մեր ... ջրհեղեղը կծածկի գլխավոր սրբավայրերը,*
*Որ ոչնչանա սերմը մարդկային ցեղի ...,*
*Այդպիսին է վճիռն ու որոշումն աստվածների ժողովի»:*
*Անի և Էնլիլի խոսքով...*
*Նրա թագավորությունը, նրա կառավարմանը (վերջ կգա):*

(Վնասված է մոտ 40 տող)

*Բոլոր փոթորիկներն արտասովոր ուժով փոթորկվեցին միաժամ:*
*Եվ այդ իսկ պահին ջրհեղեղը ծածկեց գլխավոր սրբավայրերը:*
*Յոթ օր ու յոթ գիշեր*
*Ջրհեղեղը ծածկեց երկիրը,*
*Եվ ահռելի նավը քամիները քշում էին փոթորկված ջրերի վրայով:*
*Հետո ելավ Ութուն՝ նա, որ լույս է տալիս երկինքներին ու երկրին:*
*Այնժամ Զիուսուդրան բացեց իր հսկա նավի պատուհանը,*

*Եվ Ութուն՝ հերոսը, իր ճառագայթներով մտավ հսկա նավ:*
*Զիուսուդրան՝ արքան,*
*Փռվեց Ութուի առաջ:*
*Արքան նրա համար ցուլ սպանեց, ոչխար մորթեց:*

(Վնասված է մոտ 39 տող)

*Անը և Էնլիլը հոչակեցին. «Շունչը երկինքների, շունչը երկրի», և ըստ նրանց ... այն տարածվում էր,*
*Եվ բույսերը, դուրս գալով հողից, բարձրացան (աճեցին):*
*Զիուսուդրան՝ արքան,*
*Փռվեց Անի և Էնլիլի առաջ:*
*Անն ու Էնլիլը գուրգուրեցին Զիուսուդրային,*
*Տվեցին նրան կյանք՝ նման աստծո,*
*Հավերժական շունչ, որպես աստծո, բերեցին նրան վերից:*
*Հետո Զիուսուդրային՝ արքային,*
*Փրկչին բոլոր բույսերի անունների ու մարդկային ցեղի սերմի,*
*Դիլմուն երկրում՝ անցման երկրում, ուր մայր է մտնում արևը, նրանք բնակեցրին:*

(Վնասված է ևս մոտ 39 տող)

*1.* ***Նինտու*** *– շումերական մայր աստվածուհու անուններից մեկը:*

*2.* ***Ան*** *– շումերների երկնքի աստվածը, մտել է դիցարանի գերագույն քառյակի մեջ, մեծարվել է «աստվածների հայր» տիտղոսով: Նրա կինը երկնքի դիցուհին էր և, ըստ ավանդության, մինչև իրենց առաջնեկ Էնլիլի ծնունդը միասին ապրել են տիեզերական լեռան մեջ: Վերջինս, ծնվելով՝ բաժանեց ծնողներին, հորը բարձրացնելով երկինք, մորը իջեցնելով երկիր: Անի խորհրդանիշը եղջյուրավոր պսակաթագն էր:*

*3.* ***Էնլիլ*** *– գլխավոր գերագույն աստվածը շումերական դիցարանում: Երկնքի աստված Անի ավագ որդին է, որն աստվածների ցուցակներում նշվել է Անից հետո, իսկ ժամանակի ընթացքում ձեռք բերել առաջնություն՝ նաև հոր նկատմամբ, ստանալով նրա «բոլոր աստվածների հայր» պատվանունը: Համարվել է եթերի, քամու և փոթորիկի աստվածը:*

*4. Էնկին կամ Հայան համաշխարհային օվկիանոսի, ստորերկրյա ջրերի և իմաստության աստվածն է, շումերական դիցարանի չորս գերագույն աստված-ներից մեկը, որը համարվել է մարդկանց և քաղաքակրթության բազում ար-ժեքների արարիչ: Նրա պաշտամունքը սերտորեն կապվել է Հայկական*

*լեռնաշխարհի, նրանից ելնող Եփրատի և Տիգրիսի հետ:*

*5. **Նինխուրսագ** – շումերների մայր աստվածուհին, նրանց դիցարանի գերագույն քառյակի միակ իգական աստվածությունը: Մասնակցել է արարչությանը, համարվել պտղաբերություն շնորհող դիցուհի, մեծարվել «բոլոր աստվածների մայր» տիտղոսով:*

*6. **Սևագլուխ ժողովուրդ** – շումերների ինքնանվանումը, երբեմն հանդես է գալիս նաև որպես մարդկային ցեղի պոետիկ անվանում:*

*7. Նուդիմմուդը Հայա-Էնկի աստծո պատվանուններից է, որը շումերերեն նշանակում է «արարչագործ»:*

*8. Ութուն շումերական դիցարանում արևի աստվածն է:*

*9. **Ինանա** – սիրո, գեղեցկության, պտղաբերության և պատերազմի դիցուհին, Լուսաբեր (Վեներա) մոլորակի աստվածուհին:*

2.

***Ջրհեղեղի մասին շումերական բնագրում, թերևս վնասվելու պատճառով, բացակայում է փրկարար տարածքի անունը: Բարեբախտաբար, այդ բացթողումը հնարավոր է լրացնել շումերական մեկ այլ՝ «Էնմերքարը և Արատտայի տիրակալը» բնագրի հաղորդմամբ, որում Արատտա[1] երկրի ժողովրդին տրվում է հետևյալ բնորոշումը.***

*Ժողովուրդն Արատտայի՝ գերադասված մյուս ժողովուրդներից,*
*ժողովուրդը, որին Դումուզին[2] զատեց մյուս ժողովուրդներից,*
*ժողովուրդը, որ կատարում է խոսքը լուսե Ինաննայի ...*
*...*
*նրանք, որ կանգնեցին ջրհեղեղի մեջ,*
*այն ժամանակ, երբ ջրհեղեղը սրբեց ամեն բան...*

*1. Արատտան Հայկական լեռնաշխարհի մինչ օրս հայտնի առաջին պետությունն է (Ք. ա. XXVIII–XXVII դդ.), որը թե՛ անվամբ, թե՛ տեղագրորեն և թե՛ ջրհեղեղի հետ կապված ավանդությամբ զուգադրելի ու նույնական է Աստվածաշնչի Արարատի հետ: Արատտա-Արարատը փրկիչ երկիր է հանդիսանում ինչպես շումերական, այնպես էլ աստվածաշնչյան աշխարհ - ընկալումներում [Արատտայի մասին մանրամասն տե՛ս **Ա. Մովսիսյան**, Հայաստանը Քրիստոսից առաջ երրորդ հազարամյակում (ըստ գրավոր աղբյուրների), Երևան, 2005, էջ 16–30, 56–60]:*

*2. Դումուզին համարվել է Հայա-Էնկի գերագույն աստծո որդին, որի անունը*

*շումերերեն նշանակում է «հարազատ (իսկական) որդի»: Հունական աղբյուրներում համապատասխանեցվել է Օրիոնի հետ, որն Աստվածաշնչի ոսկեդարյան թարգմանության մեջ նույնացված է Հայկի հետ: Եղել է Արատտայի հովանավոր աստվածը, համապատասխանում է հայոց հին դիցարանի Հայկին:*

## *ԼՈՒԳԱԼԶԻԳԵՍԻ ԱՐՔԱՅԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ*

*(Հատված)*

***Ուրուկի երրորդ դինաստիայի արքա Լուգալզիգեսին Ք. ա. XXIV դ. կարողացել էր իր իշխանության տակ միավորել շումերական քաղաք-պետությունները: Իր գործերի փառաբանության ընթացքում նա նշում է, որ հասել է մինչև Վերին ծով՝ Վանա լիճ: Ներկայացվում է այդ մասին հատվածը*** (**E. Sollberger**, **J.-R. Kupper**, Inscriptions Royales Sumeriennes et Akkadiennes, Paris, 1971, էջ 93-95; **И. М. Дьяконов**, Общественный и государственный строй древнего Двуречья. **Шумер**, М., 1959, էջ 199; **S. N. Kramer**, The Sumerians, Chicago, 1963, էջ 323-324):

*(I, 36 - II, 2) ... Երբ Էնլիլ աստվածը՝ արքան բոլոր երկրների, Երկրի (իմա՝ Շումերի) թագավորությունը տվեց Լուգալզիգեսիին, Երկրի (ողջ ժողովրդի) աչքերն արևելքից մինչև արևմուտք ուղղեց նրան, տապալեց (ողջ ժողովրդին),*

*(II, 3 – II, 12) այնժամ Ներքին ծովից Տիգրիսով (ու) Եփրատով մինչև Վերին ծով բացեց նրան ճանապարհ[1]: Արևելքից մինչև արևմուտք Էնլիլը նրան մրցակից չտվեց ...*

*1. Ս. Ն. Քրամերն առաջարկում է հատվածը թարգմանել այսպես. «Ներքին ծովից Տիգրիսով (ու) Եփրատով մինչև Վերին ծով (բոլոր ժողովուրդները) դեպի նա ուղղեցին իրենց ոտքերը» (**S. N. Kramer**, The Sumerians, Chicago, 1963, էջ 323-324):*

## ՍԱՐԳՈՆ ԱՔԱԴԱՑՈՒ ՏԵՐՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ


Սարգոն Աքադացի

***Սարգոն Աքադացու տերության աշխարհագրության վերաբերյալ մեզ է հասել նոր ասուրական ժամանակաշրջանի ուշագրավ մի բնագիր, որում արտահայտություն են գտել նաև Ք. ա. II հազարամյակի իրողությունները: Հայագիտությանն այն հայտնի է դարձել Ն. Ադոնցի միջոցով, որն օգտագործել է դեռևս չհրատարակված բնագրի տեղեկությունները է. Ֆորերի մի հոդվածից: Վերջինս, ելնելով այն հանգամանքից, որ բնագրում հիշատակվում են Ք. ա. II հազարամյակում հայտնի դարձած մի քանի երկրանուններ, եզրակացրել է, որ բնագիրը վերաբերում է ոչ թե Սարգոն Աքադացու, այլ Սարգոն Աշուրացու (Ք. ա. XIX դ.) տերությանը (Ն. Ադոնց, Հայաստանի պատմություն, Երևան, 1972, էջ 25-26): Այդ կարծիքը տարածում է գտել հայագիտության մեջ: Սակայն ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ բնագիրն իրոք վերաբերում է Սարգոն Աքադացու տերությանը և այն լրացվել է Ք. ա. II հազարամյակում: Բնագիրը՝ հանգամանալի վերլուծությամբ՝ տե՛ս*** **W. F. Albright,** A Babylonian Geographical Treatise on Sargon of Akkad's Empire, "Journal of the American Oriental Studies", vol. 45, 1925, էջ 193–245; *առավել ճշգրտված՝* **E. Weidner,** Das Reich Sargons von Akkad, AfO, 1952-1953, Bd. 16, էջ 1–24 ***(հատկապես, էջ 4–5, 12–13):***

*1) [... -ից] Բագայի կամուրջը, որ գտնվում է Մելլուխա երկրի ճանապարհի սահմանին,*

*2) Մինչև մայրիների լեռների երկիրը (տարածվում է) Խանա երկիրը՝ ինն արքաներ(ով):*

*3) Մայրիների լեռների երկրից մինչև Անզանզան (տարածվում է) Սուբարտու երկիրը:*

*4) [......]: Հարկը, տանելով հարկը Սարգոնին,*

*5) [......]: Նա տիրում էր ամբողջությամբ:*

*6) [... -ից] Եփրատի ափին մինչև Ծուփրու[1] Մարի երկիրն է:*

*7) [... -ից մինչև] Յաբուշե Ռապիգու երկիրն է:*

*8) [... -ից] մինչև Մաշքան-շարրի Աշշուր երկիրն է:*

*9) Տիգրիս և Եփրատ գետերի [միջև ընկած շրջանը / ճանապարհը]:*

*10) [... -խայից] մինչև Լուբդի Առափխա երկիրն է:*

*11) Վերին և Ներքին Զաբ գետերի [միջև ընկած շրջանը / ճանապարհը]:*

*12) Ուրունայից մինչև Ծի(?)նու Լուլլուբի երկիրն է:*

*13) Էբլայից մինչև Բիթ-Նանիպ Արմանի երկիրն է:*

*14) Խիզզաթից մինչև Աբուլ-Ադադ Աքադ երկիրն է:*

*15) Աբուլ-Ադադից մինչև ալաբա Գուտիում երկիրն է:*

*16) Խալաբայից մինչև Զումիրու(?)նի Նիգգու երկիրն է:*

*17) Շուբբուից մինչև Իբրաթ Դեր երկիրն է:*

*18) Իբրաթից մինչև Իշ(?)փաթում Լագաշ երկիրն է:*

*19) Կու[լլ]աբիից մինչև Ծովը Կութ(?)ումթա ժողովուրդն է:*

*20) PA-ից մինչև Մանգիծու ERIM երկիրն է:*

*21) Քիսիքից մինչև Սիպպար Կադի (Աքադ) երկիրն է:*

*22) Գուտիական Տիրգանից մինչև Ուս/զար-իլուլու Էդամարուս/զ երկիրն է:*

*23) Ուս/զար-իլուլուից մինչև Բիթ-Ս/Շին Մարի երկիրն է:*

*24) Բիթ-Ս/Շինից մինչև Մաշքան-շաբրի Մալգի(ում) երկիրն է:*

*25) Շաբրու-քենուից մինչև Դառը ջուրը Էմութբալ(ում) երկիրն է:*

*26) Բիթ-Խուբբայից մինչև Ռախաբութ Ռ[ախաբ]ու[թ] երկիրն է:*

*27) Բիթ-GAB-GAL-ից մինչև Էրիշաբա [...].A երկիրն է:*

*28) Թ/Դուրգուից մինչև ID.KUR.RA[2] Մութիաբալ երկիրն է:*

*29) Աբուլ-շուրշիմից մինչև Ամուրրու երկրի սահմանային էգու մարզի վերջին(?) DIM-ը Շումեր երկիրն է:*

*30) 120 beru Եփրատի ջրավազանից մինչև Մելուխայի սահմանը, Ամուրրու երկիրը, որի սահմանը Մարին է[3]:*

*31) Սարգոնը՝ աշխարհի (տիեզերքի) արքան, երբ նա երկիրը, որ տարածվում էր մինչև երկինք, ճնշեց,*

*32) ... (և) իր գլխավոր ճանապարհը չափեց[4]:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*33) 40 beru է ճանապարհը դեպի[5] Պարասիի:*

*34) 60 beru է ճանապարհը դեպի Թուկրիշ:*

*35) 90 beru է ճանապարհը դեպի Էլամ:*

36) 180 beru է ճանապարհը դեպի Աքադ:

37) 120 beru է ճանապարհը դեպի Սուբարտու:

38) 120 beru է ճանապարհը դեպի <MAR.>TU, Լիբանանից մինչև Թուրուկկի[6]:

39) 90 beru է ճանապարհը դեպի Լուլլուբի:

40) 90 beru է ճանապարհը դեպի Անզան(զան):

41) Անակու (և) Կապտարա երկրները, որ գտնվում են Վերին ծովի կողմում,

42) Թիլմունը (և) Մագանը, որ գտնվում են Ներքին ծովի կողմում,

43) և երկրներն Արևածագից մինչև Արևմուտք,

44) Սարգոնը՝ աշխարհի (տիեզերքի) արքան, երեք անգամ նվաճեց իր ձեռքը[7]:

45) Անզան(զան) երկրից մինչև [...]րի, AMAR[...], AMAR.ŠA.TAK,

46) [...]լաբից մինչև [...], Լուլ(լ)ուբի, ...

47) Բազա (?), [......] և Ուզունի (?) երկիր, որ Մելուխխայի սահմանում է[8]:

1. Ընթերցվել է նաև «Զուբ/պրու»:

2. ID.KUR.RA բառացի՝ «լեռնային գետ»:

3. Տողը թարգմանել ենք՝ հետևելով Վ. Ն. Օլբրայթին (**W. F. Albright,** A Babylonian Geographical Treatise on Sargon of Akkad's Empire, "Journal of the American Oriental Studies", vol. 45, 1925, էջ 244): Է. Վայդները «Ամուրրու երկիրը, որի սահմանը Մարին է» արտահայտության փոխարեն նշում է միայն՝ <Մարի> (**E. Weidner,** Das Reich Sargons von Akkad, AfO, 1952-1953, Bd. 16, էջ 19):

4. 30-31-րդ տողերի թարգմանությունը խիստ կասկածելի է, տարբեր գիտնականներ այն մեկնում են յուրովի: Մենք հետևել ենք Է. Վայդներին:

5. «Ճանապարհը դեպի» արտահայտության փոխարեն առաջարկվել է «հեռավորությունը մինչև» թարգմանությունը (**W. F. Albright,** A Babylonian Geographical Treatise on Sargon of Akkad's Empire, "Journal of the American Oriental Studies", vol. 45, 1925, էջ 244):

6. Վ. Ն. Օլբրայթն առաջարկում է տողը թարգմանել հետևյալ կերպ. «120 beru է ճանապարհը դեպի Խալծու, Լաբնանուից մինչև Թուրուկկի» (**W. F. Albright,** A Babylonian Geographical Treatise on Sargon of Akkad's Empire, "Journal of the American Oriental Studies", vol. 45, 1925, էջ 244):

7. Վ. Ն. Օլբրայթն առաջարկում է թարգմանել՝ «նվաճեց իր երրորդ (տարում ?)»:

8. 45-47-րդ տողերը Է. Վայդները չի թարգմանում. այն բերում ենք ըստ Վ. Ն. Օլբրայթի:

*ՍԱՐԳՈՆ ԱՔԱԴԱՑՈՒ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՓՐԱՏԻ ԱՎԱԶԱՆՈՎ ՄԻՆՉԵՎ ՄԱՅՐԻՆԵՐԻ ԱՆՏԱՌ ԵՎ ԱՐԾԱԹԻ ԼԵՌՆԵՐ*

***Եփրատի ավազանով դեպի հյուսիս և հյուսիս-արևմուտք կատարած արշավանքի մասին Սարգոն Աքադացին թողել է արձանագրություն՝ շումերերեն և աքադերեն տարբերակներով, որը մեզ է հասել Նիպպուրից գտնված հինբաբելոնյան ժամանակաշրջանի երկու պատճեններով*** [**G. A. Barton**, The Royal Inscriptions of Sumer and Akkad, New Hawen, 1929, էջ 108-111; **H. Hirsch,** Die Inschriften der Könige von Agade, AfO, 1963, Bd. 20, ***էջ 3, 37-39;*** **S. N. Kramer,** The Sumerians, Chicago, էջ 324; Ancient Near Eastern Texts Related to the Old Testament (ed. by J. B. Pritchard), New Jersey, 1969, էջ 268; **E. Sollberger, J.-R. Kupper,** Inscriptions Royales Sumeriennes et Akkadiennes, Paris, 1971, էջ 99; **D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), Toronto-Buffalo-London, 1993, էջ 27-29]: ***Բնագրում հիշատակվող երկրներից Մարին գտնվել է Եփրատի միջին հոսանքի շրջանում, Յարմուտին՝ Միջերկրական ծովի արևելյան ափին, Էբլան՝ Հալեպից 55 կմ հարավ-արևմուտք, Մայրիների լեռները համապատասխանում են Լիբանանի, իսկ Արծաթի լեռները՝ Տավրոսյան լեռներին: Սա, փաստորեն, Սարգոնի՝ մինչև Հայկական լեռնաշխարհի հարավային փեշերը հասնելու մասին գրավոր վկայությունն է:***

*1-8) Սարգոնը՝ արքան աշխարհի[1], հաղթեց 34 ճակատամարտ: Նա ավերեց նրանց (քաղաքների) պարիսպները մինչև ծովի ափը:*

*9-13) Նա Մելուխխայի, Մագանի և Թիլմունի նավերը կապեց Աքադի նավամատույցում:*

*14-19) Սարգոնը՝ արքան, ծնրադրեց Դագան աստծուն Թութթուլում:*

*20-28) Նա (Դագանը) տվեց նրան Վերին երկիրը՝ Մարին, Յարմուտին և Էբլան՝ մինչև Մայրիների և Արծաթի լեռները:*

*29-37) 5400 տղամարդ ամեն օր ուտում էր Սարգոնի ներկայությամբ[2], արքայի, որին Էնլիլ աստվածը մրցակից չի տվել:*

*38-40) Ով ջնջի այս արձանագրությունը, թո՛ղ Ան աստվածը կործանի նրա անունը, թո՛ղ Էնլիլ աստվածը վերջ տա նրա ժառանգությանը, թո՛ղ Ինաննա դիցուհին կտրի նրա ... սերունդը:*

(Մակագրություն 1)

*1-2) Արձանագրություն իր հիմքի վրա:*

(Մակագրություն 2)

*1-2) Արձանագրություն կոթողի վրա, որի հիմքն արձանագրված չէր:*

*1. Ուսումնասիրողներից շատերը նախընտրում են «աշխարհի արքա» տիտղոսը թարգմանել բառացի՝ «Քիշի արքա»:*

*2. Սա պատմությանը հայտնի առաջին մշտական մասնագիտացված բանակն է, որը վարձատրվում էր արքունիքից, ինչի շնորհիվ էլ Սարգոնը հասավ աննախադեպ հաջողությունների:*

### *ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՒԲԱՐՏՈՒ ԵՐԿՐԻ ՄԱՍԻՆ*



***Նարամ-Սուենի կոթողը Սուզայից***

***Նարամ-Սուենի վնասված մի արձանագրության մեջ (որը մեզ է հասել հինբաբելոնյան շրջանի կրկնօրինակով) ամփոփվում են նրա նվաճումների արդյունքները*** [**D. R. Frayne**, The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), էջ 162-163]: ***Կարծիք է հայտնվել, որ այս արձանագրությունը պատկանում է ոչ թե Նարամ-Սուենին, այլ Ուրի երրորդ հարստության արքա Շուլգիին*** (**I. Kärki,** Die Königsinschriften der Dritten Dynastie von Ur, Helsinki, 1986, էջ 130-131)***, ինչը համոզիչ չէ:***

***Այս արձանագրության կարևորագույն հաղորդումներից մեկը Սուբարտու երկրի տեղորոշումն է Վերին ծովի, այսինքն՝ Վանա լճի ափերին:***

*1′-11′) ..., Մախազ[ում]ը, Փու[չ]ը, ..., Է[ըլ]ան, Մարին, Թուխթուլը, ..., Ուրքիշը, Մուքիշը, ..., ..., Աբարնումը, և երկիրը, որտեղ մայրիներ են հատում, իր նահանգների երկայնքով: Սուբարտու երկիրը՝ [Վե]րին ծո[վի] ափերին, և Մագանը՝ [իր] նահանգների երկայնքով ... մյուս կողմը ծո[վի ...]*

## ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ՝ «ՍՈՒԲԱՐՏՈՒԻ ԿԱՌԱՎԱՐԻՉՆԵՐԻ» ՀԻՇԱՏԱԿՈՒԹՅԱՄԲ

***Եթե նախորդ արձանագրությունից իմանում էինք Սուբարտուի՝ Վանա լճի ափերին գտնված լինելու մասին, այս արձանագրությունը հնարավորություն է տալիս ավելի ամբողջական պատկերացնելու այդ երկրի ընդգրկումը՝ Բարախսիից (Ուրմիա լճի հարավակողմում) մինչև Մայրիների լեռներ՝ Ամանոս: Այստեղից ևս ակնհայտ է դառնում Սուբուր (Սուբարտու) – Արման(ի/ում) համապատասխանությունը (հիշենք վերը բերված Սարգոն Աքադացու աշխարհագրության մեջ Արման(ի/ում) երկրի սահմանները («Էբլայից մինչև Բիթ-Նանիպ Արմանի երկիրն է») որոնք նույնանում են Սուբարտուի հետ):***

***Արձանագրությունը մեզ է հասել հին բաբելոնյան շրջանի երկու կրկնօրինակներով*** [**H. Hirsch,** Die Inschriften der Könige von Agade, AfO, 1963, Bd. 20, էջ 20, 72-73; **E. Sollberger, J.-R. Kupper,** Inscriptions Royales Sumeriennes et Akkadiennes, Paris, 1971, էջ 106-107; **D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), էջ 129-131]:

*1-16) Նարամ-Սուենը՝ Աքադի արքան, հրամանատարը ... Էլամ երկիրն ամբողջությամբ՝ մինչև Բարախսի (Պարախշում), և [Ս]ուբարտու երկիրը մինչև Մայրիների լեռներ:*

*17-32) Այժմ, [ե]րբ նա գնաց [դե]պի Թալխադում – ոչ մի թագավոր (նախկինում) չէր ձեռնարկել նման արշավանք - Նարամ-Սուենը՝ Աքադի արքան, գնաց այնտեղ և Իշտար դիցուհին նրան մրցակից չտվեց:*

*33-40) Սուբարտուի կառավարիչները և Վերին (երկրների) տիրակալները իրենց հարկերը բերեցին [նրա] առաջ:*

*41-46)* (**Վնասված են և անընթեռնելի**)

*47-52) Նարամ-Սուենը՝ Աքադի արքան, նվիրեց (այս կոթողը) Նինգուբլագա աստծուն:*

*53-70) Ով որ ջնջի այս արձանագրությունը, Նինգուբլագա աստվածը՝ տերն այս կոթողի, և Շամաշ աստվածը թո՛ղ պատառոտեն նրա հիմքերը: Թո՛ղ նրանք կործանեն նրա սերունդը: Թո՛ղ նրանք [չ]նվիրեն նրան [իր] արու (ժառանգին) կամ իր սե[րունդը]: Թո՛ղ նա [չ]քայլի իր (անձնական) [աս]տծո առաջ:*

## ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԱՆՈՒՄԻ ԵՎ ԷԲԼԱՅԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

*(Հատված)*

***Նարամ-Սուենի բնագրերից մի քանիսում վկայվում է այդ արքայի՝ Հայկական լեռնաշխարհ հասնելն և այնտեղ Արմանում երկրին բախվելը: «Արման(ում)ը» Արմենիա երկրանվան մինչ օրս ամենավաղ հիշատակությունն է:***

***Արձանագրությունը հայտնի է հինբաբելոնյան շրջանի մեկ կրկնօրինակով՝ գտնված Ուրից: Առաջին անգամ հրատարակվել է 1928 թվականին*** [Ur Excavations. Texts, I, Royal Inscriptions (by C. J. Gadd and L. Legrain), London, 1928, էջ 74-79, № 275], ***ապա ունեցել է բազմաթիվ մասնակի և ամբողջական հրատարակություններ: Թարգմանության համար հիմք ենք ընդունել ամենաամբողջական և լավագույն հրատարակությունը*** [**D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), էջ 132-135]:

*I, 1-10)* *Քանի որ երբեք՝ մարդկության արարումից ի վեր, ոչ մի թագավոր չէր կործանել Արմանումն ու Էբլան,*

*I, 11-20)* *Ներգալն[1] (իր) զենքով ճանապարհ բացեց Նարամ-Սուենի՝ հզորի համար, և տվեց նրան Արմանումն ու Էբլան:*

*I, 21-29)* *Եվ նա տվեց նրան Ամանոսը՝ Մայրիների լեռը, ու Վերին ծովը:*

*I, 30 - II, 1)* *Շնորհիվ Դագանի[2] զենքերի, որը մեծացնում է նրա թագավորությունը,*

*II, 2-7)* *Նարամ-Սուենը՝ հզորը, նվաճեց Արմանումն ու Էբլան:*

*II, 8-19)* *Եվ Եփրատի ափից մինչև Ուլիշում նա ջախջախեց մարդկանց, ում Դագանը տվել էր նրան ի սկզբանե,*

*II, 20-23)* *քանի որ նրանք կատարել էին ծառայություն Իլաբայի[3]՝ իրենց աստծո համար:*

II, 24-28) Հետագայում նա (ամբողջությամբ) տիրեց Ամանոսին՝ Մայրիների լեռանը:

II, 29 – III, 6) Երբ Դագանը որոշեց ճակատագիրը Նարամ-Սուենի՝ հզորի, նրա ձեռքը հանձնեց Ռիդ/շ-Թեշուբին (Ռիդ/շ-Ադադին)՝ Արմանումի արքային,

III, 7-10) և (երբ) նա (Նարամ-Սուենը) անձամբ հաղթեց նրան իր (պալատի) մուտքի կենտրոնում,

III, 11-16) նա (Նարամ-Սուենը) իր արձանը քանդակեց դիորիտից և նվիրեց (այն) Սին (Լուսնի) աստծուն:

III, 17-31) Այսպես է ասում Նարամ-Սուենը՝ հզորը, արքան (աշխարհի) չորս կողմերի. «Դագան աստվածը տվեց ինձ Արմանումն ու Էբլան, և ես հաղթեցի Ռիդ/շ-Թեշուբին (Ռիդ/շ-Ադադին)՝ Արմանումի արքային:

III, 32-IV, 3) Այդ ժամանակ ես իմ արձանը քանդակեցի և նվիրեցի (այն) Սին (Լուսնի) աստծուն:

IV, 4-6) Թո՛ղ ոչ ոք չջնջի իմ արձանագրությունը,

IV, 7-10) Թո՛ղ իմ արձանը կանգնի Սին (Լուսնի) աստծո առաջ:

**(Արձանագրության շարունակության մեջ նշվում է նվաճված տարածքում ամրոց կառուցելու և Նարամ-Սուենի պատկերով ու արձանագրությամբ կոթող կանգնեցնելու մասին):**

1. Ներգալը միջագետքյան դիցաբանության անդրաշխարհի աստվածն էր:

2. Արևմտասեմական աստված (աքադական, ուգարիթյան աղբյուրներում՝ Դագան, փյունիկյանում՝ Դագոն), որը դատելով անվան ստուգաբանությունից՝ սկզբնապես եղել է երկրագործության կամ ձկնորսության հովանավոր, աքադական դիցաբանության մեջ զուգադրվել է Ադադի և Էնլիլի հետ՝ համարվե - լով ռազմի, գերագույն աստված (**В. К. Афанасьева**, Дагон, Мифы народов мира, т. 1, М., 1991, էջ 346):

3. Որոշ ուսումնասիրողներ «Իլաբա» դիցանվան փոխարեն կարդում են «Աբա», գտնելով, որ առաջին մասնիկը սեմական «աստված» բառն է, որն այս դեպքում ծառայում է իբրև որոշարկիչ (դետերմինատիվ):

## ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԸ՝ «ՆՎԱՃՈՂՆ ԱՐՄԱՆՈՒՄԻ ԵՎ ԷԲԼԱՅԻ»

**Արմանումի և Էբլայի նվաճումը Նարամ-Սուենի Եփրատի հոսանքով դեպի հյուսիս կատարած արշավանքների մեծագույն արդյունքն էր, այդ իսկ պատճառով այն նշվում է մի քանի արձա-**

***նագրությունններում։ Արմանումը, փաստորեն, հյուսիսի գերտերությունն էր, իսկ էբլան՝ հյուսիս-արևմուտքի։***

***Արմանումի և էբլայի նվաճման մասին Նարամ-Սուենի հակիրճ այս հաղորդումը պահպանվել է երեք տարբեր առարկաների վրա արձանագրված (Վ. Մաթթէոսեան, Սեպագիր աղբիւրներու Արման երկիրը, «Հանդէս Ամսօրեայ», 1994, № 1-12, էջ 255)։***

*Նարամ-Սուենը՝ հզորը, (աշխարհի) չորս կողմերի արքան, նվաճողը Արմանումի և էբլայի։*

## ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԸ՝ «ՆՎԱՃՈՂՆ ԱՐՄԱՆՈՒՄԻ, ԷԲԼԱՅԻ ԵՎ ԷԼԱՄԻ»

***Նիգգումի (Դիալա գետի վերին հովտում) կառավարիչ Քարշումի երկու բնագրերում Նարամ-Սուենը ներկայանում է իբրև «նվաճողը Արմանումի, էբլայի և էլամի»*** [**E. Sollberger, J.-R. Kupper**, Inscriptions Royales Sumeriennes et Akkadiennes, Paris, 1971, էջ 111; **D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), **էջ 166-167**]***։ Քարշումը Նարամ-Սուենի վասալներից էր։ Այս արձանագրության մեջ, փաստորեն, չեշտվում է Արմանումի նվաճումը որպես հյուսիսի գերտերության, էբլայինը՝ հյուսիս-արևմուտքի, էլամինը՝ արևելքի ։***

*1-2) Իլաբա աստծուն,*

*3-13) Նարամ-Սուենը՝ հզորը, (աշխարհի) չորս կողմերի արքան, նվաճողը Արմանումի, էբլայի և էլամի,*

*14) նվիրեց (այս գայիսոնը)։*

*5-19) Քարշումը՝ սուրհանդակը, Նիգգումի կառավարիչը, նրա ծառան (է)։*

## ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԴԻԱՐԲԵՔԻՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

***Արմանում երկրի դեմ ձեռնարկած պատերազմի մասին վկայող Նարամ-Սուենի պատկերով և արձանագրությամբ կոթողը գտնվել է Դիարբեքիրի մոտակա Փիր Հուսեին հնավայրից և տեղափոխվել Ստամբուլի Հին Արևելքի Թանգարան*** [**G. A. Barton,** The Royal

Inscriptions of Sumer and Akkad, New Hawen, 1929, ***էջ 140–141 (բնագրի առաջին հրապարակումների հղումներով]***; [**D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), *էջ 128–129*]:

*I, 1-2) Նարամ-Սուենը, հզորը ...*
(**վնասվածք**)
*II, 1-6) Էնկի (Հայա, Էա) աստվածը [նրան չտ]վեց մրցակից (աշխարհի) չորս կողմերում:*
(**վնասվածք**)
*II, 1′ – III, 4) Նա բնա[աջնջեց ...] և բարձրացրեց գերեզմանակույտ:*
*III, 5-12) Ով այս արձանագրությունը ջնջնի, թո՛ղ Ինաննա դիցուհին [և ... ու ... աստվածները]*
(**վնասվածք**)
*III, 1′ – IV, 4) պատառոտի [նրա հիմքերը] և ոչնչանի նրա սերունդը:*
*IV, 5-8) [Թո՛ղ նրանք չպարգ]ևեն [նրան] ար[ու] (ժառանգ) կամ սերունդ:*
*IV, 9-11) [Թո՛ղ նա չքայլի իր (անձնական) աստծո առաջ]:*
(**վնասվածք**)

### *ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԴԵՊԻ ՍԻՄՈՒՐՐՈՒՄ ԵՎ ԱՐԱՄԵ ԵՐԿՐՆԵՐ*

***Նարամ-Սուենը Տիգրիսի հովտով արշավանքներ է ձեռնարկել դեպի Մեծ և Փոքր Զաբ գետերի միջնատարածքում գտնվող Սիմուրրում երկիրը: Այդ մասին վկայող արձանագրություններից մեկը պատմում է միայն դեպի Սիմուրրում երկիր արշավանքի մասին [«Տարին, երբ Նարամ-Սուենն արշավեց Սիմուրրումի վրա»*** (**D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), ***էջ 87]: Մեկ ուրիշը՝ Սիմուրրումի դեմ տարած հաղթանակի և Սիմուրրումի ու Արամե երկրի տիրակալներին գերեվարելու մասին, բերում ենք ստորև*** [**D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), *էջ 87*]:

***Տարին, երբ Նարամ-Սուենը Կիրաշենիվեում հաղթեց Սի-***

մուրրումին և գերեց Բաբային՝ Սիմուրրումի կառավարչին[1], (և) Դուբուլին՝ Արամեի[2] կառավարչին:

1. Սիմուրրումի կառավարիչ Բաբան հիշատակվում է նաև մի խիստ վնասված արձանագրության մեջ [**D. R. Frayne,** The Royal Inscriptions of Mesopotamia, Early Periods, Vol. 2, Sargonic and Gutian Periods (2334-2113 BC), էջ 144-145)]:

2. Զափազանց հետաքրքիր է Վանա և Ուրմիո լճերի միջնատարածքի հարավում Արամ երկրի հիշատակությունը, որը համադրելի է Ուրի երրորդ հարստության արքա Շուլգիի (Ք. ա. XXI դ.) մի բնագրում հիշվող Արամ երկրի հետ (**Finkelstein J. J.**, Subartu and Subarians in Old Babylonian Sources, JSC, 1955, vol. IX, 1, էջ 2), Ք. ա. III-II հազարամյակների սահմանագծով թվագրվող, Աշուրից գտնված խաթա-խեթական երկլեզու մի արձանագրության Ուրամեի (**Вяч. Вс. Иванов,** Выделение разных хронологических слоев в древнеармянском и проблема первоначальной структуры текста гимна Ва(х)агну, 1983, ՊԲՀ, № 4, էջ 30-31), հինբաբելոնյան աղբյուրներում հիշատակվող Արամուի, որը Սուբարտուի մասն էր կազմում (**J. J. Finkelstein,** Subartu and Subarians in Old Babylonian Sources, էջ 1-2), Վանի թագավորության (Ուրարտու) արքունական Արամալի (Արմարիլի) երկրի հարավակողմին կամ Մանայի թագավորության Արմաիդ (Արմեդ, Ուրմեյատե) քաղաքի շրջանին (Արամալի / Արմարիլի երկրի և Արմաիդ (Արմեդ, Ուրմեյատե) քաղաքի տեղորոշումը տե՛ս **Н. В. Арутюнян,** Топонимика Урарту, էջ 30-31, 37-39): Պատահական չէ, որ Ք. ա. III հազարամյակի Արամ(ե) երկիրը մի շարք ուսումնասիրողներ նույնացնում են Արման(ի/ում)ի հետ (**I. J. Gelb,** Inscriptions from Alishar and Vicinity, Chicago, 1935, էջ 6; **J. Lewy,** Tabor, Tibar, Atabyros, "Hebrew Union College Annual", 1950-1951, 23, 1, էջ 368-376; **А. Кифишин,** Географические воззрения древних шумеров при Патеси Гудеа, "Палестинский сборник", вып. 13(76), Ленинград, 1965, էջ 64-66): Մեծագույն հավանականությամբ Արամ երկրանունը պետք է կապել հայկական ավանդության Արամին, որի անունով էլ, ըստ Պատմահայր Խորենացու (Գիրք Ա, գլուխ ԺԲ), օտարները կոչեցին մեր երկիրն ու ժողովրդին:

## ԱՆՈՒԲԱՆԻՆԻԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

***Նարամ-Սուենի դեմ դաշնակցած տասնյոթ երկրների մասին պատմող «Քութայի արքայի լեգենդը» վիպասքի համաձայն այդ դաշինքը ղեկավարել է Լուլլուբիի արքա Անուբանինին՝ իր յոթ որդիների հետ: Անուբանինիից մեզ է հասել աքադերեն արձանագրությամբ ժայռափոր կոթող՝ պատերազմի Ինանա-Իշտար դիցուհու և***



*Անուբանինիի կոթողը*

*իր պատկերով: Արձանագրությունը չափազանց վնասված է* (**F. Thureau-Dangin,** Die sumerischen und akkadischen Königsinschriften, Leipzig, 1907, էջ 172–173; **G. A. Barton,** The Royal Inscriptions of Sumer and Akkad, New Hawen, 1929, էջ 150–151; **E. Sollberger, J.-R. Kupper,** Inscriptions Royales Sumeriennes et Akkadiennes, Paris, 1971, *էջ 168*)*:*

*1–8) Անուբանինին՝ հզոր արքան, արքան Լուլլուբումի, Բաթիր լեռան վրա քանդակեց իր պատկերն ու պատկերն Ինաննա դիցուհու:*

*9-36) Ով ջնջի այս երկու պատկերներն ու արձանագրությունը, թո՛ղ Անուն և Անթումը, Էնլիլն ու Նինլիլը, Ադադն ու Ինանան, Սուենն ու Շամաշը, ......, (աստվածը), տիրա(կալը) ..., մեծ աստվ[ածներ]ը և (աստվածներն) անդր[աշխարհի (?)] նզովեն կործանման անեծքով, թո՛ղ ոչնչացնեն (նրա) սերունդը: Վերին ծովը և Ներքին (ծովը) .......*[1]

*1. Խիստ վնասված վերջնամասում կարելի է կարդալ առանձին բառեր՝ «նրա հայրը և», «գետը», «և գետը», «ոչ» և այլն, ինչից հնարավոր չէ դուրս բերել կապակցված իմաստ:*

## ԿՈՒՏՈՒ ԵՐԿԻՐԸ ԷԼԱՄԻ ԱՐՔԱ ԿՈՒՏԻԿ-ԻՆՇՈՒՇԻՆԱԿԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

***Նարամ-Սուենը էլամի արքա Կուտիկ-Ինշուշինակի (աքադական աղբյուրներում՝ Պուզուր-Ինշուշինակ) հետ կնքեց հաշտության ու փոխօգնության պայմանագիր՝ ստեղծելով հակակուտիական դաշինք: Էլամի արքայի մեզ հասած մի արձանագրության մեջ կուտիական երկիրը՝ «Գ/Կուտու» ձևով, հիշվում է նրա թշնամի երկրների ցանկում, որոնց դեմ պատերազմել է ինքը*** (**G. A. Barton,** The Royal Inscriptions of Sumer and Akkad, New Hawen, 1929, *էջ 158-159):*

*I, 1-18) Շուշինակ աստծուն՝ իր տիրոջը, Պուզուր-Ինշուշինակը՝ քուրմ-արքան Սուզայի, կառավարիչն էլամ երկրի, որդին Շիմբի-Իշքուզի, երբ Կիմաշն ու Խուրտիմ երկիրը պատերազմեցին, նա գնաց և հնազանդեցրեց այս թշնամիներին.* (Թվարկվում են շուրջ յոթ տասնյակ երկրներ, որոնցից **Գուտու** երկիրը հիշվում է II սյունակի 12-րդ տողում):

## ՆԱՄԱԿ ԱՐԱԴՄՈՒԻՑ ՇՈՒԼԳԻ ԱՐՔԱՅԻՆ

***Շուլգին Ուրի երրորդ հարստության արքաներից է (Ք. ա. XXI դար): Նրանից մեզ հասած արձանագրությունների մեջ առանձնահատուկ խումբ են կազմում հետախուզական փաստաթղթերը: Դրանցում Սուբուր երկիրը ներկայանում է հզոր ու բարգավաճ:***

*Երկրի տիրակալն ուներ «արչավանքի տուն» (ներկայիս եզրաբանությամբ՝ «գլխավոր շտաբ»), նստում էր ոսկե գահի վրա՝ ոտքերը դնելով ոսկե աթոռակին: Օտարերկրյա դեսպանի ընդունելության ժամանակ արքայի աջում և ձախում կանգնում էին նրա կառավարիչները, որոնցից յուրաքանչյուրը պատասխանատու էր նշանակված հինգ հազար ծառայողների: Հետաքրքիր է, որ այստեղ խոսվում է արքունիքի կողմից կերակրվող զինվորների, այսինքն՝ մշտական մասնագիտացված բանակի մասին: Պատասխան նամակում Շուլգի արքան հանձնարարում է Սուբուրի «մեծ մարդկանցից», այսինքն՝ Ավագների ժողովի անդամներից «իմանալ նրանց խոսքը»* (S. N. Kramer, The Sumerians, Chicago, *էջ 332-333), ինչը ցույց է տալիս, որ պետական կառավարման մեջ դեռևս Ք. ա. XXVIII-XXVII դարերից հայտնի արքային կից բարձրագույն խորհրդակցական մարմինը («Ավագների ժողովը») շարունակում էր գոյություն ունենալ նաև հազարամյակի վերջում:*

*Ներկայացվող նամակ-զեկուցագիրը Հայկական լեռնաշխարհի հետախուզման մասին առաջին վկայագիրն է* (S. N. Kramer, The Sumerians, *էջ 331-332):*

*1-2) Իմ արքային ասացեք. այսպես է ասում քո ծառա Արադմուն.*

*3-8) Դու հանձնարարել էիր ինձ, քանի որ ես ուղղություն էի վերցրել դեպի Սուբիր երկիր, ապահովել գավառային հարկերը, ճշգրիտ տեղեկացնել տարածքների վիճակի մասին և երաշխավորել դրանց հնազանդությունը՝ խորհրդակցելով Ապիլլաշայի[1]՝ «Ժողովի իմաստունի» հետ, որ նա կարողանա Սուբիրի ժողովրդին վերադարձնել իրենց ընդունված խոսելու ձևին (?)[2]:*

*9-11) Երբ ես մոտեցա պալատի դարպասին, ոչ ոք չհարցրեց ողջույթյունն իմ տիրոջ: Նրանք, որ նստած էին, չկանգնեցին կամ չխոնարհվեցին:*

*12-18) Երբ ես մոտեցա (ես տեսա, որ) նա ուներ ... «արշավանքի տուն»[3], ուր կանգնեցված էին ոսկով, արծաթով, կարնեոլով ու լաջվարդով զարդարված քերոցներ(?) և նիզակներ, որը բռնում էր մեկ հեկտար տարածք: Ապիլլաշան ինքն իրեն զարդարել էր ոսկով, արծաթով, կարնեոլով ու լաջվարդով, և նա բազմել էր բարձր դրված գահին՝ զարդարված ճոխ հագուստներով: Նա դրել էր ոտքը ոսկյա աթոռակի (ոտքի պատվանդանի) վրա (և) չշարժեց ոտքը իմ ներկայությունից:*

*19-21) Աջ և ձախ կողմերում նա ուներ ... զինվորները (?) տեղա-*

*կայվել էին, ամեն կողմում հինգ հազար: Նա նրանց կերակուր էր հատկացրել 6 գիրացրած ցուլ և 60 (տարբերակ՝ 20) գիրացրած խոյ (տարբերակ՝ ոչխար): Նա ստանձնել էր սրբագործման ծեսեր կատարելու իմ տիրակալի իրավունքը:*

*22–25) Դարպասի մոտ խիստ հարցաքննելուց հետո ոչ ոք անգամ չհրավիրեց ինձ ներս մտնել: Երբ ես վերջապես մտա, ինչ-որ մեկը բերեց ինձ կարմիր ոսկուց ճարմանդներով զարդարված աթոռ և ասաց ինձ՝ «Նստի՛ր»: Ես պատասխանեցի. «Ես այստեղ եմ՝ կատարելու իմ արքայի հանձնարարությունները: Ուստի ես չեմ նստի»:*

*26–28) Նրանք բերեցին (?) ինձ 2 (տարբերակ՝ 1) գիրացրած ցուլ և 20 (տարբերակ՝ 6) գիրացրած խոյ իմ սեղանի մոտ: Այնժամ քանի որ առանց ......, իմ տիրակալի զինվորները չրջեցին իմ սեղանը, ես սարսափեցի և իմ մարմինը սարսռաց:*

*29–34) Էզեն-Նինազու ամսին, 15-րդ (տարբերակ՝ 5-րդ) օրվանից հետո իմ տիրակալն ինձ տվեց հանձնարարություններ: Ու-բիգու ամսվա առաջին օրը[4] ես ուղարկեցի քեզ[5] մի սուրհանդակ: Հիմա ամսվա կեսն է[6]: Թո՛ղ իմ տիրակալն իմանա:*

*1. Ս. Ն. Քրամերը «Ապիլլաշա»-ն չի ընկալում որպես հատուկ անուն, թարգմանելով՝ «զարչելի (?) սերմ»:*

*2. Ս. Ն. Քրամերը վերջին արտահայտությունը թարգմանում է՝ «դարձնել հնազանդ»:*

*3. Առաջարկվել է թարգմանել նաև «ճանապարհամերձ իջևան», ինչը քիչ հավանական է:*

*4. Տարբերակ՝ «1 օր է անցել Ու-բիգու ամսից»:*

*5. Տարբերակ՝ «ես ուղարկեցի իմ տիրակալին»:*

*6. Տարբերակներ՝ «հիմա օրվա կեսն է», «օրը չի ...»:*

## ՇՈՒ-ՍՈՒԵՆ ԱՐՔԱՅԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՄԱՍԻՆ

*(Հատվածներ)*

***Ուրի երրորդ հարստության արքա Շու-Սուենի բնագրերում բազմիցս հիշատակվում է Սու երկիրն՝ իր ժողովրդով, որը նույն Սուբուր-Սուբարտուն է: Բերում ենք նրա արձանագրություններից երեք հատված:***

*1.*

***I. Kärki, Die Königsinschriften der Dritten Dynastie von Ur, Helsinki, 1986, էջ 106–109։***

*II′, 1- 40) ... ... ունի նա... ոսկի (և) արծաթ ... ունի նա... պղինձ և անագ, բրոնզ և սպասք (դրանից), ունի նա բեռնված էշերին բարձած, Էնլիլի տունը, Նինլիլի տունը և մեծ աստվածների տունը/տները տևական իրենն է դարձրել։ Շու-Սուենը՝ Անից և Կիից անուն ստացած թագավորը, Էնլիլի կողմից մեծ ուժով չնորհված մինչև իր օրերի վերջը ... Բուլման, Սու ժողովրդի, ... դեն նետվա՞ծ, բնակչությունից, կուսակալը/կուսակալները և անվանի անձինք ... ...*

*III′, 1–35) ... հավերժ ... ոչ ... կողմում ... Շու-Սուենը՝ թագավորը, սևագլուխների հովիվը ... և Մարդամանին կոչ է արել ..., ոսկին (և) արծաթը պեղել և հանել տալ։ Այդ ժամանակ Շու-Սուենը՝ հզոր թագավորը, աշխարհի 4 կողմերի թագավորը, ոսկին, որ նա Սու ժողովրդի երկրներն էր բերել, իր պատվանդանը պատրաստել տվեց (և) Էնլիլին, իր տիրոջը, (նա) նրա բարօրության համար նվիրաբերեց։ Ով կջնջի*

*IV′, 1–16) այս արձանագրությունը (և) իր (անունը) (իմ անվան փոխարեն) դրա վրա կգրի (կամ) իմ գործը (այլ ձևով) կփչացնի, նրան Էնլիլը՝ երկրների տերը, (և) Նինլիլը՝ աստվածների տիրուհին, թո՛ղ նզովեն։ Նինուրտան, Էնլիլի մեծ հերոսը, հրամանատարն է այդ գործում։*

*IV′, 17–18) Արձանագրություն (կոթողի) հիմքի վրա։*

*2.*

***I. Kärki, Die Königsinschriften der Dritten Dynastie von Ur, Helsinki, 1986, էջ 131–132։***

*... իր տիրոջը, Շու-Սուենը՝ հզոր թագավորը, Ուրի թագավորը, աշխարհի չորս կողմերի թագավորը, երբ նա Զաբաղի և Սու ժողովրդի երկրները ոչնչացրեց, մի մեծ նոխազի, որին նա որպես տուրք Անշանից էր բերել, արտանկարը ստեղծեց (և) իր բարօրության համար նվիրաբերեց։*

*3.*

*I. Kärki, Die Königsinschriften der Dritten Dynastie von Ur, Helsinki, 1986, էջ 134–136:*

*... չի փոխվում: Տեր Նունամիրը անկատար չի թողնում իր տիկնոջ ոչ մի ցանկություն. Նինլիլը՝ իշխանուհին, բոլոր երկրներում մեծագույնը, Շու-Սուենի սիրեցյալ տիրուհին, նրան տվել է կյանքի օրեր, մի երկար կյանք, (արքայական) գլխարկն ու թագ երկար օրերի համար, ամուր հիմքով թագավորական գահ, զենք՝ սարսափելի փայլով, որը (թշնամիներին) գետին է տապալում Aankara (զենքը) թևին, որի սարսափելի փայլը երկինք է հասնում, այն ... ... սպանում է, թշնամու երկիրը, գրավում ...*

*... Նինլիլ ... Շու-Սուեն ... Նինլիլ ... ցանկացավ, Նինլիլը, Էնլիլի սիրեցյալ տիկինը, թագավորին, որին Էնլիլը իր սրտում տեղ է տվել, նրան՝ հզոր թագավորին, Ուրի թագավորին, աշխարհի 4 կողմերի թագավորին, իր սիրելի ծառային (հովվություն երկրի վրա) և աշխարհի չորս կողմերում տվեց, այն ժամանակ Սու ժողովրդի (և) Զաբզալի և Անշան երկրներից ... ...*

*... Նինլիլին՝ իր տիրուհուն նա իր բարօրության համար նվիրաբերեց:*

## ՀՆԱԳՈՒՅՆ ԽՈՒՌԻԵՐԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

***Մինչ օրս հայտնի հնագույն խուռիերեն արձանագրությունը՝ գրված աքադական սեպագրով (կանգնեցված Ք. ա. XXIII–XXI դարերի միջև) կապվում է Ուրքիշ քաղաքի հետ (Հայոց Միջագետքում), որը գտնվել է Մասիուս/Մասիոն լեռների հարավային լանջերին, Մարդին քաղաքից հարավ (Թելլ Մոզան հնավայր): Այն վերաբերում է անդրաշխարհի Ներգալ աստծո պաշտամունքին նվիրված տաճարի կառուցմանը և, ինչպես համանման այլ արձանագրությունները, ավարտվում է կառույցը ոչնչացնողներին ուղղված անեծքի բանաձևով[1]:***

***Վերջին տարիների ընթացքում հայտնաբերվեցին արձանագրության ևս երեք կրկնօրինակներ: Թարգմանությունն ըստ* И. М. Дьяко-**

**нов, Языки древнеи Передней Азии, М., 1967, էջ 443–445; I. M. Diakonoff,** Hurrisch und Urartäisch, München, 1971, էջ 110; **G. Wilhelm,** Grundzüge der Geschichte und Kultur der Hurriter, Darmstadt, 1982, էջ 15–16; **G. Wilhelm**, Die Inschrift des Tišatal von Urkeš, "Bibliotheca Mesopotamica", *26, 1998, էջ 119–120 (թարգմ. Ա. Մովսիսյանի):*

*«Թիշարին[2] արքան է Ուրքիշի: Տաճարը Ներգալի (նա) կառուցեց, տաճարն այդ Լուբադագան թո՛ղ պահպանի: Նա, ով այն իրոք ոչնչացնի, նրան Լուբադագան թո՛ղ ոչնչացնի, Անը թո՛ղ չլսի աղոթքը նրա, ով այն իրոք ոչնչացնի, նրան թո՛ղ $^{d}$NIN.NA.GAR$^{ki}$, Շիմիգե և Թեշուբ աստվածները անթիվ-անհամար անգամ նզովեն»:*

*1. Արձանագրությունը կարևոր վկայագիր է Ք. ա. III հազարամյակի վերջին դարերում մեր երկրի հարավ-արևմտյան շրջանների հոգևոր-պաշտամունքային իրավիճակի մասին: Ըստ որոշ ուսումնասիրողների, «այս արձանագրության լեզուն նույնքան մոտ է ուրարտերենին, որքան խուռիերենին, և, ըստ էության, կարող է դիտարկվել ոչ միայն որպես հին խուռիերեն, այլ նաև՝ հին ուրարտերեն» (**И. М. Дьяконов,** Языки древней Передней Азии, էջ 444):*

*Նույն հնավայրից գտնվել են նաև կնիքներ՝ մեկ այլ արքայի մակագրությամբ. «Թուփքիշ՝ արքա Ուրքիշի» [V. Vs. **Ivanov**, Hurrian ENDAN "KING" and the origin of Hurrian -nd- (nasal + dental stop), էջ 92, և հղված գրականությունը]:*

*2. Անունը նախապես ընթերցվում էր Թիշարի, վերջերս վերանայվեց և առավել ընդունելի համարվեց «Թիշաթալ» տարբերակը (**G. Wilhelm,** Die Inschrift des Tišatal von Urkeš, էջ 120–121):*

## ՀԻՆ ԱՍՈՒՐԵՐԵՆ ԲՆԱԳՐԵՐԸ Ք. Ա. XIX–XVIII ԴԱՐԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՑԵՂԵՐԻ ՄԱՍԻՆ

***Ք. ա. XIX–XVIII դարերում Առաջավոր Ասիայի հյուսիսով՝ Աշուրից մինչև Քանեշ (Փոքր Ասիայի կենտրոնական արևելքում) ձգվում էր մետաղի առևտրի գլխավոր մայրուղին: Աշուրից և Քանեշից գտնված բազմահազար առևտրական բնագրերը (գրված հինասուրերեն) վկայում են, որ նշված մայրուղու հետ կապ են ունեցել Հայկական լեռնաշխարհի մետաղի արդյունահանման ու առևտրի ավելի քան 40 իշխանություններ ու բնակավայրեր:***

*Ք. ա. XIX դարավերջին և XVIII դարասկզբին Շամշի-Ադադ I-ի օրոք հզորանում է Աշուրը՝ իր ազդեցությանը ենթարկելով շրջակա մի շարք տարածքներ (Զագրոսից մինչև Սիրիայի կենտրոնական շրջաններ՝ ներառյալ Մարին Եփրատի միջին հոսանքի շրջանում)։ Մեզ են հասել նրա և Հին Աշուրի արքաների մի շարք արձանագրություններ՝ գրված հինասուրերենով, որոնք տեղեկություններ են հայտնում Հայկական լեռնաշխարհի մասին։*

*Հինասուրերենով են գրված նաև Միջագետքի հյուսիսից և Հայկական լեռնաշխարհի հարավից գտնված մի շարք արձանագրություններ, որոնցից մեկը Դիարբեքիրից գտնված ստորև հիշատակվող նվիրատվական գրությամբ թուրը։*

*Ենթաբաժնի արձանագրությունների թարգմանությունը՝ Ա. Մովսիսյանի։*

## *ՔԱՆԵՇԻ ԲՆԱԳՐԵՐԻՑ ՄԵԿԸ, ՈՐՈՒՄ ՀԻՇԱՏԱԿՎՈՒՄ Է ԽԱԽՈՒՄ ԵՐԿԻՐԸ*

*Դեռևս XX դարի սկզբին գանձախուզության հետևանքով, ապա 1925 թ. Բ. Հրոզնիի կողմից սկսված համակարգված պեղումների շնորհիվ, Քանեշ քաղաքից (Քյուլ թեփե հնավայր) հայտնաբերվեցին հազարավոր կավե սալիկներ՝ գրված հին ասուրերեն, որոնք վկայում են Փոքր Ասիայի, Հայկական լեռնաշխարհի և Միջագետքի միջև Ք.ա. XIX-XVIII դդ. գոյություն ունեցած առևտրական հարաբերությունների մասին։ Դրանցում հիշատակվում են նշված տարածքների շուրջ 120 բնակավայրեր, որոնք կապված են եղել առևտրամիավորման կենտրոն Քանեշի և Քանեշ-Աշուր առևտրական մայրուղու հետ, նշվում բազմաթիվ տեղեկություններ, որոնց ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս պատկերացնելու տվյալ ժամանակաշրջանի ոչ միայն առևտրա-տնտեսական, այլ նաև քաղաքական, էթնիկական և այլ իրավիճակները։ Քանեշի հնավայրի և բնագրերի ուսումնասիրության մասին, համապատասխան գրականության հղումներով, տե՛ս* P. Garelli, Les Assyriens en Cappadoce, Paris, 1963, էջ 9-29, 391-406; **Н. Б. Янковская**, Клинописьные тексты из Кюльтепе в сборниках СССР, М., 1968, *էջ 11-24 և այլն։*

*Խախ(ում) երկիրը, որպես ոսկու արդյունահանման կարևոր շրջան, հիշվում է Նարամ-Սուենի (Ք. ա. XXIII դ.), Գուդեայի (Ք. ա.*

*XXII դ.), Քանեշի Ք. ա. XIX–XVIII դդ. բնագրերում, Խախա անվամբ՝ խեթական աղբյուրներում, Խախի տարբերակով՝ Վանի թագավորության արձանագրություններում, Խախ ձևով՝ Մովսես Խորենացու և Փավստոս Բյուզանդի մոտ: Այն գտնվել է Մեծ Հայքի Բարձր Հայք նահանգի և շրջակա տարածքներում (նշված բոլոր տեղեկություննե-րի մասին՝ գրականության հղումներով՝ տե՛ս Մովսիսյան Ա., Հայաստանը Քրիստոսից առաջ երրորդ հազարամյակում, էջ 69–70, 83):*

*Ստորև բերվում է Խախումի հիշատակությամբ բնագրերից մեկը, տե՛ս* **Н. Б. Янковская,** Клинописьные тексты из Кюль-тепе в сборниках СССР, *էջ 120–122:*

Ա երես

*Աշ[ուր . . . . . . ]ին¹ ասա,*
*(ասում են) Ռ[ի(?) . . . . . ] և Բանին.*
*Քաղաքից (հարկ եղավ) հինգ ուղևորություն, (քանի որ)*
*տոնին [հասնելու համար] վարձավճարով*
*ես վարձել էի (մարդկանց) մինչև Խախում, (իսկ)*
*Խախումից*
*նրանք վախենում էին [գն]ալ:*
*[Այս]տեղ ամենը, ինչ պետք է ուղարկվի,*
*[բե]րել են այստեղ Բանիի համար*
*[. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .]*
*[. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .]*
*[. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .]*
*[. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .]*

Բ երես

*[. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .]*
*[. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .]*
*[այս/ն]տեղ Ա[. . . . . . . . . ]ի հետ*
*[. . . . . . . . . ] նրանք տեսնվեցին, այնտեղ*
*նրանք հավաքվեցին և գնացին;*
*բայց նրանց*
*իմ հանձնակատարների հետ ուղարկեք,*
*խնդրում եմ: Իմ հանձնակատարը*

*ստուգել է: Ուղարկեք այստեղ:*
*Նա սպասել է պատվերի,-*
*նա, ով արծաթին տասը սիկղ, որոնք ամ[ենը]*
*[. . . . . . . . . . . . . . . . . ] գնով (?)*

Կողքին

*տուր, և մենք [. . . . . . . . . . . . . . . . . . . . ]*
*իսկապես բերեցինք :*

*1. Վնասվածը դիցանվանակերտ (Թեոփոր) անձնանուն է, որի առաջին հատվածը Աշուր դիցանունն է: Վնասված է նաև երկրորդ տողի երկու անձնանուններից առաջինը:*

## ՏՈՒԳՐԻՇ ԵՐԿԻՐՆ ՈՒ ՎԵՐԻՆ ԵՐԿՐՆԵՐԸ ՇԱՄՇԻ-ԱԴԱԴ I-Ի ԲՆԱԳՐԵՐՈՒՄ

***Իր նվաճումների մասին պատմող արձանագրության մեջ Շամշի-Ադադ I-ը տեղեկացնում է նաև Հայկական լեռնաշխարհի, մասնավորապես, Տուգրիշ երկրի մասին: Տուգրիշ (Թուկրիշ) երկիրը հիշատակվում է Սարգոն Աքադացու տերության աշխարհագրությունը ներկայացնող բնագրում (տե՛ս վերը): Տուգրիշը Լուլլուբի երկրի (Ուրմիո լճից հարավ) հարևանությամբ է հիշվում Խեթական տերության մայրաքաղաքից գտնված խուռիերեն մի բնագրում (Էլամ-Լուլլուբի-Տուգրիշ հերթականությամբ): Համմուրապի արքայի՝ Ուրից գտնված արձանագրության մեջ այն վկայված է Էլամից, Գուտիումից և Սուբարտուից հետո (տե՛ս ստորև): Այս տեղեկությունների ամփոփումից ակնհայտ է, որ Տուգրիշը գտնվել է Հայկական լեռնաշխարհի առնվազն հարավում՝ Լուլլուբումի, Գուտիումի և Սուբիրի հարևանությամբ: Դա Վանա և Ուրմիո լճերի միջնատարածքն է, ուստի չի բացառվում, որ տեղանունն ուղղակի կապ ունենա Վասպուրականի Տայգրեան գավառի հետ (Տուգրիշի տեղորոշման վերաբերյալ տե՛ս Ա. Բոբոխյան, Հայաստանյան Տուգրիշ պետությունը Հին Արևելքում, «Գարուն», 1993, № 5-6, էջ 80-83; Ա. Մովսիսյան, Սրբազան լեռնաշխարհը. Հայաստանը Առաջավոր Ասիայի հնագույն հոգևոր ընկալումներում, էջ 23-25):***

***Թարգմանությունը կատարվել է* E. Ebeling, B. Meissner, E. Weidner**

**F.,** Die Inschriften der Altassyrischen Könige, Leipzig, 1926 ***Հրատարակությունից (էջ 22-27):***

(Տիտղոսաշարի ներկայացումից և տաճարաշինության մասին պատմելուց հետո)

***«...Այնժամ ես խսկապես ստացա Տուգրիշ երկրի և Վերին երկրների[1] հարկերն իմ Աշշուր քաղաքում: Ես իմ մեծ անունն ու իմ քարե արձանագրությունն իսկապես կանգնեցրի Լաբան[2] երկրում՝ Մեծ ծովի ափին»:***

*1. Սարգոն Աքադացու արձանագրություններում «Վերին երկիր»-ը բացատրվում է որպես «Մարին, Յարմուտին և Էբլան՝ մինչև Մայրիների և Արծաթի լեռները», Նարամ-Սուենի մոտ հիշատակվում է Սուբարտուի հարևանությամբ (տե՛ս* ***Ա. Մովսիսյան,*** *Հայաստանը Քրիստոսից առաջ երրորդ հազարամյակում էջ 129-131, 153): Հավանաբար, այստեղ ևս նկատի է առնված Եփրատի վերին հոսանքի շրջանը: Խեթական բնագրերում նույն անվամբ երկիր է հիշատակվում Արևմտյան Եփրատի վերին հովտում, այդ պատճառով էլ առաջարկվել է այն նույնացնել Մեծ Հայքի Բարձր Հայք նահանգի հետ:*

*2. Կարծիք է հայտնվել, որ սա Լիբանանի հնագույն անվանումներից է, ինչի օգտին կարող է խոսել «Մեծ ծովի» (իմա՝ Միջերկրական ծովի) ափին գտնվելը:*

### *ՀԻՆ ԱՍՈՒՐԵՐԵՆ ԳՐՈՒԹՅԱՄԲ ՍՈՒՐ ԴԻԱՐԲԵՔԻՐԻ ՇՐՋԱՆԻՑ*

***Դիարբեքիրի շրջանից գտնվել և ներկայումս Եվրոպայի մասնավոր հավաքածուներից մեկում պահվում է 1,09 մետր երկարությամբ բրոնզե սուր, որի կենտրոնում առկա է Ք. ա. XIX-XVIII դդ. թվագրվող հին ասուրերեն սեպագիր արձանագրություն: Սեպագիր արձանագրությամբ այս բրոնզե սուրը, որն իր ժամանակաշրջանի հազվագյուտ գտածո է Հայկական լեռնաշխարհից, կարող է լույս սփռել մեր երկրի (հատկապես հարավ-արևմտյան շրջանների) Ք. ա. XIX-XVIII դարերի պատմության որոշ անհայտ հարցերի վրա[1]: Արձանագրությունը բերվում է ըստ*** **H. G. Güterbock,** A Votive Sword with Old Assyrian Inscription, Studies in honour of B. Landsberger in his 75th birthday, Assyriological Studies № 16, Chicago, 1965, ***էջ 197-198 (նկարները՝ աղ. XIII-XV):***



***Զենքեր Հայաստանի հնավայրերից***
***(Ք. ա. II հազարամյակ)***

*«Խուբշալումի[2] տիրակալին. նրա տեր Լուլուանումը՝ որդին Ագիզումի, իր կյանքի և իր որդու կյանքի համար 12 մինա (քաշով)[3] թուր նվիրեց (բերեց)»:*

*1. Մասնավորապես, ուշագրավ տվյալներ կարելի է ստանալ հատուկ անունների վերլուծությունից: Խուբշալ(ում) կամ Խութեշալ(ում) երկրանունը, ինչպես նշում է հրատարակիչը (**H. G. Güterbock**, A Votive Sword with Old Assyrian Inscription, էջ 197), իր կազմությամբ ակնհայտորեն հիշեցնում է Ապիշալ(ում) երկրանունը, իսկ վերջինս գտնվում է Հայկական լեռնաշխարհի արևմտյան շրջաններում (Ապիշալի մասին տեղեկությունները՝ գրականության հղումներով, տե՛ս **I. J. Gelb,** Studies in the Topography of Western Asia, "American Journal of Semitic Languages and Literatures", LX, Chicago, 1938, էջ 70-72):*

*2. Հնարավոր է երկրանվան «Խութեշալում» ընթերցումը: Ըստ հրատարակչի՝ Խութեշալումի տիրակալը (կամ Բելը) պետք է նույնացվի Աշուրբանապալի գրադարանից հայտնի Ներգալ-Խուբշալի հետ, որը համարվել է անդրաշխարհի աստվածություն (**H. G. Güterbock,** A Votive Sword with Old Assyrian Inscription, էջ 197-198):*

*3. 12 մինան հավասար է 6 կիլոգրամի. դարերի ընթացքում քայքայման ենթարկվելով՝ այն ներկայումս կշռում է մոտ 5 կիլոգրամ (H. G. Güterbock, A Votive Sword with Old Assyrian Inscription, էջ 197):*

## ԽԵԹԱԿԱՆ ՍԵՊԱԳԻՐ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՄԱՍԻՆ

***Հայկական լեռնաշխարհի վերաբերյալ փոքրասիական վաղագույն բնագրերը, որ գտնվել են Կանեշ քաղաքից, Թվագրվում են Ք. ա. XX-XVIII դարերով (հայտնի են նաև «Կապադովկիական սալիկներ» անվամբ) և գրված են հին ասուրերեն (տե՛ս համապատասխան բաժնում):***

***Խեթական սեպագիր արձանագրությունները, որոնց մեջ կան նաև վաղ միջագետքյան բնագրերի թարգմանություններ (մասնավորապես, Նարամ-Սուենի մասին խեթական լեգենդը), կարևորագույն հաղորդումներ են պարունակում Հայաստանի հնագույն շրջանի պատմության վերաբերյալ:***

***Հայկական լեռնաշխարհի քաղաքական և էթնիկական պատմության մեջ զգալի դեր է խաղացել խեթական սեպագիր արձանագրություններում հիշատակվող Հայասա պետական կազմավորումը: Պատմագիտության մեջ տիրապետում է այն տեսակետը, որ Հայասա անվան հիմքում ընկած է հայ ժողովրդի ինքնանվանումը: Սկզբնաղբյուրների հաղորդած տվյալների մանրակրկիտ վերլուծությունը հետազոտողներին բերել է այն եզրակացության, որ Հայասա երկիրը տեղադրվել է Մեծ Հայքի Բարձր Հայք նահանգի, Փոքր Հայքի, հնարավոր է, նաև հարակից այլ տարածքում:***

### *ԽԵԹԱԿԱՆ ԼԵԳԵՆԴԸ ՆԱՐԱՄ-ՍՈՒԵՆԻ ՄԱՍԻՆ*
*(Հատված)*

***Նարամ-Սուենի մասին խեթական լեգենդը հայտնի է մի քանի բնագրերով և տարբեր ուսումնասիրողների կողմից հրատարակվելով՝ ստացել է նաև «Քութայի արքայի լեգենդը», «Նարամ-Սուենի՝ Սարգոնի որդու լեգենդը», «Շու-իլիի լեգենդը» անվանումները: Մի քանի բնագրերից վերականգնված 175 տողանոց գրավոր այս հուշարձանի քննական հրատարակությունը տե՛ս*** **O. R. Gumey,** The Sultantepe Tablets: IV. The Cuthaean Legend of Naram-Sin, ***էջ 93-113, որից էլ կատարվել է թարգմանությունը (թարգմ. Ա. Մովսիսյանի):***

*37) Յոթ արքաներ՝ եղբայրներ, փառահեղ և ազնվական,*

38) Նրանց զորքը[1] հաշվվում էր 360 հազար:

39) Նրանց հայրը Անուբանինին էր՝ արքան, նրանց մայրը՝ Թագուհին, Մելիլի էր նրա անունը:

40) Նրանց ավագ եղբայրը՝ նրանց առաջնորդը, նրա անունն էր Մեմանդախ:

41) Նրանց երկրորդ եղբայրը, նրա անունն էր Միդուդու:

42) Նրանց երրորդ եղբայրը, նրա անունն էր Կուկուպիշ (?):

43) Նրանց չորրորդ եղբայրը, նրա անունն էր Բալդախդախ:

44) Նրանց հինգերորդ եղբայրը, նրա անունն էր Թարթադադա (?):

45) Նրանց վեցերորդ եղբայրը, նրա անունն էր Աբուդանադիխ:

46) Նրանց յոթերորդ եղբայրը, նրա անունն էր Խարշակիդու (?):

47) Նրանք նվաճեցին փայլող լեռները,

48) Պաշտոնյան արգելակեց նրանց, բայց նրանք ջարդեցին նրանց ազդրերը:

49) Իրենց ներխուժման սկզբ(ում) նրանք մոտեցան Բուրուշխանդարին:

50) Բուրուշխանդարի ամբողջ շրջանը թալանվեց,

51) Փուխ(ու)լու քաղաքը թալանվեց,

52) Փուրանշու քաղաքը թալանվեց,

53) ..........................................

54) ......... Ուման-մանդան, [նրանց] ճամբարը էն[լիլ]ի բնակավայրն (էր) (կամ՝ «Շուբաթ-էնլիլն էր»),

55) և նրանք բոլորը հավաքվեցին Սուբարտուի կենտրոնում,

56) Նրանք ամայացրեցին «Ծովերը»[2] և ներխուժեցին Գուտիում:

57) Նրանք ամայացրեցին Գուտիումը և ներխուժեցին Էլամ երկիր:

58) Նրանք ամայացրեցին Էլամ երկիրը և ներ[խուժեցին] «ներս»[3]:

59) Նրանք կոտորեցին (մարդկանց) ճանապարհների խաչմերուկների, նրանք նետեցին նրանց [............]

60) Դիլմունը, Մագանը, Մելուխխան և բոլոր երկրները ծովի մեջտեղում, նրանք ոչն[չացրեցին (?)]:

61) Տասնյոթ արքաներ՝ 90 հազար զորքով,

62) դուրս եկան նրանց օգնության:

63) Ես կանչեցի պաշտոնյային և հանձնարարեցի նրան.

64) «[Վերցրու] նիզակը: ... [..........]

65) կպցրու (դրանց) ludu(?)-ին, [ծակիր (դրանց)] նիզակով:

*66) [Եթե արյուն հոսի,] նրանք մարդիկ են մեր նման:*

*67) [Եթե արյուն չհոսի,] նրանք չար ոգիներ են, ուրվականներ,*

*68) [ուրվակ]աններ և չարագործներ, Էնլիլի արարածներ»:*

*69) Պաշտոնյան հետ բերեց նրան (հաղորդումը).*

*70) «Ես կպցրեցի դրանք ludu(?)-ին,*

*71) Ես ծակեցի դրանց նիզակով, և արյուն եկավ»:*

*72) Ես կանչեցի գուշակներին և հանձնարարեցի նրանց:*

*73) Ես «դիպա» [յոթ և կրկին] ուլի:*

*74) [Ես ուղևորվեցի] սուրբ տաճարը եղեգնի:*

*75) Ես հարցրեցի մեծ աստվածներին՝*

*76) Իշտարին, Բաբային (?), Զաբաբային, Անունիթումին,*

*77) Նաբուին(?) (և) Շամաշ հերոսին:*

*78) Մեծ աստվածների «կողպեքը» չտվեց (թույլտվություն) իմ գնալու և իմ ... համար:*

*79) Այսպես ես ասացի ի սրտում, սրանք էին իմ բառերը.*

*80) «Ո՞ր առյուծն է հետևում գուշակին,*

*81) Ո՞ր գայլն է խորհրդակցում երազահան-քրմուհու հետ:*

*82) Ես կգնամ ավազակի պես՝ իմ սեփական հակումով,*

*83) Ես կվերցնեմ ինձ համար երկաթյա (?) luddu զենքերը»:*

*84) Երբ եկավ առաջին տարին,*

*85) Ես ուղարկեցի 120 հազար զորք, բայց ոչ ոք կենդանի չվերադարձավ,*

*86) Երբ երկրորդ տարին եկավ, ես ուղարկեցի 90 հազար զորք, բայց ոչ ոք կենդանի չվերադարձավ,*

*87) Երբ երրորդ տարին եկավ, ես ուղարկեցի 60700 զորք, բայց ոչ ոք կենդանի չվերադարձավ,*

*88) Ես այլայլվեցի, չփոթվեցի, մթագնեցի, վշտաբեկ, ուժասպառվեցի:*

*89) Այսպես ես ասացի ի սրտում, սրանք էին իմ բառերը.*

*90) «Ի՞նչ ունեցա ես՝ իմ թագավորությանը ցույց տալու:*

*91) Ես արքա եմ, որ չի բերում ծաղկում իր երկրին:*

*92) Ես արքա եմ, որ չի բերում բարգավաճում իր ժողովրդին...*

*1. Բնագրում՝ «ջոկատները», որը բոլոր տեղերում փոխել ենք «զորք»-ով:*

*2. Այսինքն՝ Վանա և Ուրմիո լճերի շրջանը:*

*3. Թերևս՝ Միջագետքի ներքին շրջաններ:*

## ԽԵԹԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍԱ ԵՐԿՐԻ ՄԱՍԻՆ

***Հայասա երկրի մասին եզակի տեղեկություններ են պահպանվել խեթական թագավորության արխիվներում (գտնված Բողազքյոյ քաղաքատեղիում): Այդ տեղեկությունները վերաբերում են Ք. ա. XV-XIII դարերին, և որոշ պատկերացում են տալիս Հայասայի քաղաքական պատմության, հասարակական հարաբերությունների և տնտեսության մասին: Խեթական արձանագրությունների տեքստերը ինքնագրերի ձևով հրատարակվել են «***Keilschrifturkunden aus Boghazköi», Berlin, 1921-1975, I-XL (= KUB), «Keilschrifttexte aus Boghazköi», Leipzig, 1923-1975, I-XIX (= KBo) ***բազմահատոր ժողովածուներում:***

***Հայասա երկրի մասին ստորև բերված հատվածների թարգմանությունները խեթական բնագրերից կատարել է Վ. Ն. Խաչատրյանը:***

### *1.*

***Խեթական թագավոր Թութխալիաս III -ի (մոտ 1370-1345) դեպի Հայասա ձեռնարկած արշավանքի մասին գրում է նրա թոռը՝ Մուրսիլիս II-ը (1321-1295), տե՛ս* H. G. Güterbock**, Actes de Suppiluliuma redaction de Mursili II JCS, 10 (1956), A, C:

*KBo, XIV, 23, 4-9 տող. «Թութխալիասը՝ իմ պապը, Հայասա երկրի հետիոտն զինվորներին և կառամարտիկներին հաղթեց: Թութխալիասը ինքը Խաթթի երկրի[1] հետիոտն զինվորներին և կառամարտիկներին թողեց Կանտուծիլիի[2] մոտ: Նա դրանց վերադարձրեց Խաթթի երկիր»:*

*1. Խոսքը խեթական պետության մասին է:*

*2. Կանտուծիլին Թութխալիաս III-ի ժամանակ Խաթթի երկրի զորքի գլխավոր հրամանատարն էր:*

### *2.*

***Սուպպիլուլիումաս I -ի (1345-1322) դեպի Հայասա ձեռնարկած արշավանքների մասին պահպանվել են տեղեկություններ նրա որդու՝ Մուրսիլիս II-ի և նրա թոռան՝ Խաթթուսիլիս III-ի (1267-1235) տեքստերում:***

*Ա. KUB, XXXIV, 23, 4-24. «Իսկ թշնամին Խաթթի երկրից շատ հարուստ քաղաքներ խլեց, դրանցում՝ կանայք, հայրեր, եղբայրներ՝ իրենց հայրական և մայրական դռան ներսում: Ովքեր դրսում էին՝ նրանց ստրուկներին, խոշոր և մանր եղջերավոր անասուններին վերցրեց, դրանց տարավ: Յուրաքանչյուրին բռնեց: Իսուվացիներն[1] էլ այդ թվում էին: Նրանց տեղում թողեց, իսկ նրանց բոլոր խեթ ստրուկներին խլեց: Նրանց երկիրը... թողեց, իսկ սրանց վերցրեց: Իսկ իմ հայրը վրեժխնդրության համար Ծուխխապա երկիր[2] գնաց: Նա[3] իր երկրից դուրս էր գտնվում: Իսկ Ծուխխապա քաղաքը նա հրի մատնեց: Բայց ստրկությունը Հայասա երկիր էր գնացել»:*

*1. Իսուվա երկիրը հին հայկական Շահունյաց Ծոփք գավառն է՝ Արածանիի ձախ ափին (այժմ Դերսիմ):*

*2. Ծուխխապա գավառը տեղադրվում է, հավանաբար, այժմյան Բինգյոլի լեռների շրջանում:*

*3. Պետք է, ընկալել՝ թշնամու բանակն իր թագավորով:*

*Բ. KUB, XIX, 11, IV, 38-44. «Իմ պապի հետ աստվածները առաջ ընթացան: Կասկա[1] երկրի բանակը պատերազմ սկսեց: Ինչպես հայտնի է, Կասկա երկրի բանակը ամբողջովին ոչնչացավ: Իսկ երբ իմ պապը այնտեղից վերադարձավ, նա Հայասա երկիր գնաց: Իմ հայրն էլ նրա հետ էր: Երբ իմ պապը Հայասա հասավ, Կարաննին՝ Հայասա երկրի թագավորը հետիոտն զինվորներով և կառամարտիկներով դեպի Կումմախա[2] նրան ճակատամարտ տալու եկավ»:*

*1. Կասկա երկիրը գտնվել է Արևելապոնտական լեռներում՝ Կըզըլ-Ըրմաք գետի ստորին հոսանքի և Տրապիզոնի լեռնանցքի միջև:*

*2. Կումմախա երկիրը նույնանում է ուրարտական արձանագրությունների Կումախայի, ասուրական Կումմուխի և անտիկ ժամանակների Կոմմագենեի հետ, որը գտնվել է Մալաթիայից հարավ:*

**3.**

***Սուպպիլուլիումաս I-ի դաշնագիրը՝ կնքած Հայասայի թագավոր Խուկաննասի հետ (հատվածներ),***

*«Այսպես <է> Սուպպիլուլիումասը, Արևայինը, Խաթթի երկրի թագավորը: Տես, քեզ՝ Խուկաննասիդ[1], երկրորդ կարգի հերոսին, ես*

*առաջ մղեցի: Ես քեզ բարությունն արեցի: Ես քեզ Խաթթուսասում[2] և Հայասացիների ներկայությամբ պատիվ մատուցեցի՝ իմ քրոջը ես բարյացակամորեն քեզ կնության տվեցի: Քո մասին ողջ Խաթթի երկիրը, Հայասա երկիրը և բոլոր դրսի ու ներսի երկրները լսեցին: Դու, Խուկաննաս, միայն Արևայինի բարի իշխանությունը ճանաչիր: Եվ իմ որդուն, ում Արևային նշանակեմ, ասա, որ սրան թող բոլորը ճանաչեն: Եթե նրան հանդիսավոր կերպով ներկայացնելիս լինեմ, Խուկաննաս, դու էլ նրան ճանաչիր: Իսկ նրա եղբայրներին (ովքեր իմ որդիներն են), և իմ եղբայրներին ճանաչիր որպես լավ եղբայրների ու ընկերների»:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*«Քո երկրի համար ուրիշ տեր չեմ նշանակել: Իսկ թշնամուն քո երկրից դուրս եմ քշել: Արևայինս էլ քեզ քո հոր տեղն եմ նշանակել»:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*«Մարիասը, որը կար, այս գործի առիթով մահացավ: Նա հիերոդուլի մոտ չգնաց, նայում էր նրա վրա: Արևայինիս հայրն էլ երբեմն պատուհանից հետևում էր: Նրան (Մարիասին) հանցանքը համակեց: (Հայրս) ասաց՝ ինչու դու նրա վրա նայեցիր: Նա (Մարիասը) այդ բանի պատճառով մահացավ»:*

*1. Հայասա երկրի մեզ հայտնի առաջնորդներն են՝ Մարիասը, Կարաննիսը, Խուկաննասը և Անիասը: Մարիասը իշխել է Սուպպիլուլիումասի հոր և նախորդի՝ Թութխալիաս III-ի ժամանակ, որը և սպանել է տվել Հայասայի նշված առաջնորդին: Մարիասին Հայասայում հաջորդել է Կարաննիսը, որը մի շարք հաջող պատերազմներ է վարել Խաթթի երկրի դեմ: Նա եղել է Թութխալիաս III-ի և Սուպպիլուլիումաս I-ի ժամանակակիցը: Կարաննիսից հետո Հայասայի առաջնորդն է եղել Մարիասի որդի Խուկաննասը, որի հետ Սուպպիլուլիումասը կնքել է դաշնագիր: Խուկաննասից հետո Հայասա երկրում իշխել է Անիասը, որը Մուրսիլիս II-ի (Ք. ա. XIV դարի երկրորդ կես) ժամանակակիցն է:*

*2. Խեթական պետության մայրաքաղաքն է, ժամանակակից Բողազքյոյը, որը գտնվում է Անկարայից շուրջ 100 կմ արևելք:*

**4.**

***Տվյալ հատվածները վերաբերում են Մուրսիլիս II-ի տարեգրությանը*** [**A. Gotze,** Die Annalen des Mursilis (MVAeG 38), Leipzig, 1933].





*Բրոնզե արձանիկներ Հայաստանի հնավայրերից (Ք. ա. XV–XIII դդ.)*

*Ա. KBo, IV, 4, II, 16–24, 9-րդ տարի. «Թշնամին՝ Հայասա երկրի հետևոտն զինվորները և կառամարտիկները, «Բարձր երկրի»[1] կողմից Իստիտինա քաղաքը[2] ավերել էր, իսկ Կաննուվարա քաղաքը[3] շրջապատել: Նուվանծային՝ մառանապետին, բանակի հրամանատարներով, հետևոտն զինվորներով և կառամարտիկներով հանդերձ այնտեղ չի թողել: Նուվանծային լուր ուղարկեցի. – Ահա, թշնամին՝ Հայասա երկրի բոլոր հետևոտն զինվորները և կառամարտիկները, ներս մտավ, Իստիտինա քաղաքը ավերեց, իսկ Կաննուվարա քաղաքը շրջապատեց: Հետևոտն զինվորներով և կառամարտիկներով օգնության գնա»:*

1. «Բարձր երկիրը» գտնվել է Երզնկայի դաշտում, իսկ «Բարձր երկրները» ընդգրկել են նրանից արևմուտք մինչև Եփրատի ոլորանը և վերջինից հյուսիս ընկած տարածքը:

2. Իստիտինա քաղաքը կամ երկիրը տեղադրվում է Եփրատի հովտում, ժամանակակից Երզնկայից հարավ:

3. Կաննուվարա քաղաքը գտնվում էր Իստիտինայից ոչ հեռու՝ դեպի արևմուտք:

*Բ. KBo, IV. II, 67-75.* «Իսկ երբ Աստատա քաղաքից Կարգամիշ[1] մեկնեցի, արքայազն Նանածիտին, որին լուր տանելու նպատակով ուղարկել էի մառանապետ Նուվանծայի մոտ, ճանապարհին[2] շտապ ինձ հասավ և այսպես ասաց.– Քանի որ թշնամի Հայասան շրջապատել էր Կաննուվարա քաղաքը, մառանապետ Նուվանծան դեպի նա գնաց, նրան հանդիպեց Կաննուվարայի մոտ և նրան 10 հազար զինվորներով ու 7 հարյուր կառամարտիկներով ճակատամարտ տվեց: Նուվանծան նրան հաղթեց: Սպանվածները շատ են, գերիներն էլ շատ են»:

1. Կարգամիշ (Կարքեմիշ) քաղաքը Միտաննի պետության գլխավոր կենտրոններից մեկն էր, որը գրավել էր դեռևս Սուպպիլուլիումաս I-ը: Այն տեղադրվում է Եփրատ գետի ափին, ժամանակակից Բիրեջիկից ոչ հեռու:

2. Այդ ժամանակ Մուրսիլիս II-ը զբաղված էր Հյուսիսային Սիրիայի նվաճումով:

*Գ. III, 17-26.* «Երբ Կարգամիշ երկիրը ամրացրի, Կարգամիշ երկրից բարձրացա և մտա Թեգարամա երկիրը[1]: Երբ ես հասա Թեգարամա քաղաք, մառանապետ Նուվանծան և բոլոր հրամանատարները Թեգարամա քաղաքում ինձ դիմավորեցին, ինձ հետ հանդիպեցին: Ես, թերևս, անմիջապես գնայի Հայասա: Աշունը վերջանում էր: Իմ հրամանատարներն ինձ ասացին.– Աշունը վերջանում է, մեր տե՛ր, Հայասա չգնաս: – Հայասա չգնացի»:

1. Թեգարաման գտնվել է Մալաթիայից անմիջապես հյուսիս՝ Եփրատի աջ ափին: Թեգարամա երկիրը նույնացվում է Աստվածաշնչի Թոգարմայի հետ (տե՛ս **Ծննդոց**, գլ. Ժ, 4, **Եզեկիել**, գլ. ԼԸ, 6):

*Դ. III, 57-72, IV, 4-41, 10-րդ տարի.* «Իսկ երբ գարուն բացվեց, երկրորդ ճանապարհով գնացի Ազզի երկիր[1]: Ինգալավա քաղաքում

*Հետիոտն զինվորների և կառամարտիկների զորատես կատարեցի: Իսկ քանի որ ես՝ Արևայինս ազգիցիների հետ նախկինում կռվել էի (Նուվանձան՝ մառանապետը, Կաննուվարա քաղաքի մոտ նրանց դեմ պատերազմել էր), նրանք բոլորովին չհամարձակվեցին կրկին ցերեկով ինձ ճակատամարտ տալ: Նրանք նախատեսան գիշերով ինձ վրա հարձակվել, ասելով՝ գիշերը նրան մեծ վնաս կհասցնենք: Իսկ երբ Արևայինս լուր լսեցի, թե ազգիցիները նախատեսում են գիշերը բանակի կենտրոնի վրա հարձակվել, Արևայինս բանակները միացրի: Ցերեկը բանակը թեթև է շարժվում, իսկ գիշերը այն նույնպես դարանակալ է լինում: Երբ ազգիցիները այդպիսի պահպանությունը տեսան, այլևս ինձ վրա հարձակվել չհամարձակվեցին:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Երթով գնացի դեպի Արիպսա քաղաք[2] ճակատամարտ տալու: Բայց տվյալ Արիպսան ջրով է շրջափակված[3]: Քիչ հեռու եղած քաղաքի բնակչությունը իր ձեռքում էր պահում ժայռերը: Այն շատ բարձր է: Քանի որ ողջ երկիրը վերև է բարձրացել, նրա հետիոտն բանակը միավորված էր, Արևայինս ճակատամարտ տվեցի: Հզոր Դատան՝ իմ տերը[4], Արիննա քաղաքի[5] Իստանու աստվածուհին՝ իմ տիրուհին, Խաթթի երկրի Իստանու աստվածուհին, Խաթթի երկրի Ինարան[6], բանակի Դատա աստվածը, մարգագետնի Սաուսգա աստվածուհին և բոլոր աստվածները առաջ խոյացան:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Արիպսա քաղաքը առանց ճակատամարտի վերցրի: Այն դասեցի Խաթթուսաս քաղաքի ողջ ռազմական ավարի թվին: Ամրոցների հետիոտն զինվորները և կառամարտիկները, ստրուկներից բացի, շատ խոշոր և մանր եղջերավոր անասուններ ձեռք բերեցին: Արևայինս ճիշտ այն օրը հենց Արիպսա քաղաքում քնեցի:*

*Իսկ առավոտյան ճակատամարտ տալու նպատակով արշավեցի դեպի Դուկկամա քաղաքը[7]:*

*Իսկ երբ Դուկկամա քաղաքի մարդիկ ինձ տեսան իրենց դիմացը, նրանք ինձ ընդառաջ եկան, նրանք իմ ոտքերի մոտ ծնկի եկան և ինձ ասացին.– Մեր տե՛ր, մեզ՝ Արիպսա քաղաքի բնակիչների համար, Խաթթուսաս քաղաքի ռազմական ավար մի հաշվի: Մեզ, մեր տե՛ր, հավաքվածներիս վերցրու և մեզ ուղարկիր Խաթթուսուս քաղաք, մեզ դարձրու հետիոտն զինվորներ և կառամարտիկներ:*

*Այնուհետև Արևայինս թույլ չտվեցի թալանել Դուկկամա քաղաքը: Այն ռազմագերիներով հանդերձ վերցրի: Դուկկամա քաղաքում 3*

*հազար ստրուկ կար, որոնց պալատ բերեցի: Նրանց հետիոտն զինվորներ և կառամարտիկներ դարձրի:*

*Իսկ երբ Ազզի երկրի մարդիկ տեսան, թե ինչպես եմ սկսել գրավել ճակատամարտով քաղաքներն ու ամրոցները, Ազզի երկրի մարդիկ, ովքեր իրենց ձեռքում պահում էին բնակավայրեր, ամրոցներ, բարձր լեռների ժայռեր, դժվարամատչելի տեղեր, նրանք վախեցան: Ինձ ընդառաջ եկան երկրի ծերունիները: Նրանք իմ ոտքերի մոտ ծնկի եկան և ինձ ասացին.– Մեր տե՛ր, մեզ մի ոչնչացնի, մեզ ծառայության համար վերցրու: Մեր տիրոջ համար կսկսենք հետիոտն զինվոր և կառամարտիկներ տալ: Խաթթի երկրի մարդիկ, ով այստեղ է, նրան կհանձնենք: Նրանց Արևայինս հետո չոչնչացրի:*

*Աշունը վերջանում էր: Ազզի երկիրը չամրացրի: Ազզի երկրի մարդկանց երդվեցրի և հետո Խաթթուսաս քաղաք եկա: Խաթթուսասում ձմեռեցի և տարվա տոնակատարությունները արեցի»:*

*1. Ազզին Հայասայի գլխավոր նահանգն էր: Այն տեղադրվում է Ճորոխի ավազանում: Այս տեղանունը պահպանվել է Ազորդ ձևով, որպես Հայոց Տայքի մի գավառի անվանում:*

*2. Ինգալավան ու Արիպսան Ազզի երկրի գլխավոր քաղաքներից էին. գտնվում էին վերջինիս կենտրոնական շրջանում:*

*3. Շումերերեն ծով բառը ունեցել է նաև «լիճ», «ջրամբար» նշանակությունը:*

*4.* ***Դատա*** *– խեթական դիցարանի աստվածներից մեկն էր: Այն պատկերվում էր իբրև ձուկ, ցուլ ու պատանի և նվիրված էր ջրի պաշտամունքին: Նրա ձկնակերպ արձանը դրված էր Խարշալաշի քաղաքի աղբյուրի ակունքի մոտ:*

*5. Խեթական պետության պաշտամունքային կենտրոններից մեկն է, տեղադրվում է Խաթթուսաս-Բողազքյոյից հարավ:*

*6.* ***Ինարա*** *– խեթական դիցարանի հողմի գերագույն աստծու դուստրը:*

*7. Դուկկաման տեղադրվում է Ազզի երկրի հյուսիսարևելյան շրջանում:*

*Ե. IV, 42-55, 11-րդ տարի. «Իսկ երբ գարուն բացվեց, ցանկացա Ազզի երկիրը ամրացնելու գնալ: Բայց երբ Ազզի երկրի մարդիկ լսեցին, որ Արևայինը գալիս է, Ազզի երկրի մարդիկ Մուտտիսի՝ Խալիմանա քաղաքի մարդու գլխավորությամբ ընդառաջ եկան: Ինձ այսպես խնդրեցին.– Մեր տե՛ր, քանի որ մեզ մոտ արդեն ավերածություն արել ես, մեր տե՛ր, նորից մի գա, մեզ, մեր տե՛ր, ծառայության վերցրու, մեր տիրոջը հետիոտն զինվորներ, կառամարտիկներ կսկսենք տալ: Խաթթի երկրի մարդիկ, ով մեզ մոտ է, նրան կհանձնենք:*

*Նրանք Խաթթի երկրի հազար ստրուկ ինձ վերադարձրին[1]:*

*Քանի որ Մուտտիսի՝ Խալիմանա քաղաքի մարդու գլխավորությամբ ինձ այս ձևով ընդառաջ եկան և Խաթթի երկրի մարդկանց ինձ հանձնեցին, Արևայինս կրկին Ազզի երկիր չգնացի: Նրանց ծառայության վերցրեցի, նրանց ծառա դարձրի: Դրանից հետո Արևայինս այդ տարում ոչ մի տեղ չգնացի: Մտա Անկուվա քաղաք[2] և Անկուվայում ձմեռեցի»:*

*1. Այստեղ նշված է Խաթթի երկրից հայասացիների վերցրած ռազմագերիների մասին, որոնց նրանք ստրկացրել էին: Դրանք խեթեր էին, որոնց Մուրսիլիս II-ը ետ էր պահանջում:*

*2. Խեթական թագավորների ձմեռանոց քաղաքն էր: Գտնվում էր Խաթթուսասից արևելք, այն տեղադրվում է ժամանակակից Բաքիրբողազ և Խաջիկ բնակավայրերի շրջանում:*

## *ՀԱՅԱՍԱՅԻ ԱՍՏՎԱԾՆԵՐԻՆ ՀԻՇԱՏԱԿՈՂ ԽԵԹԱԿԱՆ ԲՆԱԳԻՐ*

***Հայկական լեռնաշխարհի վաղ պետական կազմավորումների շարքում Հայասան իր ուրույն տեղն ունի առաջին հերթին հիմքում «հայ» էթնոնիմն ունենալու տեսանկյունից: Ոչ պակաս կարևոր է Հայասայի՝ Բարձր Հայքի տարածքի ընդգրկումը, որը հայոց նախաքրիստոնեական դիցարանի աստվածությունների պաշտամունքի գլխավոր և նախնական կենտրոններից էր:***

***Հայասայի դիցարանի վերաբերյալ համաժամանակյա սկզբնաղբյուրները պահպանվել են Ք. ա. XV-XIII դդ. խեթական սեպագիր տեքստերում: Դրանց շարքում առանձնանում է Ք. ա. XIV դարով թվագրվող խեթական KUB, XXVI, 39 սեպագիր արձանագրությունը (բնագրի հրատարակությունները տե՛ս*** **E. Forrer,** Hajasa-Azzi, "Caucasica" IX, 1931, S. 6f. ***(գիտական տառադարձմամբ և մեկնաբանությամբ);*** **V. Haas,** Die ältesten Nachrichten zur Geschichte des armenischen Hochlands. 1985, S. 24 ***(գիտ. տառադ.);*** **Ա. Վ. Քոսյան, Հայասայի աստվածները** (KUB, XXVI, 39), **Մերձավոր և Միջին Արևելքի երկրներ և ժողովուրդներ, հ. XXIV, Երևան, 2005, էջ** 444-457 ***(գիտական տառադարձմամբ և մեկնաբանությամբ): Այն Խեթական տերության և Հայասայի միջև կնքված պայմանագրի բեկոր է, որտեղ պահպանվել է երկու հատված՝ 1) պայմանագրի վկա-աստվածների ցանկը (ՀԿ = Հակառակ կողմ) և 2) պայմանագրի***

*խիստ տուժած կեռերից մեկը (ԴԿ = Դիմային կողմ): Պայմանագրի կնքմանը վկա աստվածների ցուցակն ընդգրկում է աստվածների երկու խումբ՝ 1) Խաթթիի աստվածներ (6–25 տողեր), 2) Հայասայի աստվածներ (26–34): Առաջին խումբը ներառում է աստվածների հետևյալ կատեգորիաները՝ 1) Ամպրոպի աստվածներ (6–10 + մեկ Արևի աստվածուհի), 2) Պահապան աստվածներ (11–15), 3) անվանապես հիշատակվող այլ աստվածներ՝ առանց կից տեղանվան և ըստ տեղանունների (16–22), 4) աստվածներ, որոնք հիշատակվում են ոչ անվանապես, այլ ըստ սեռի և բնության երևույթների (23–25): Հայասայի աստվածները, բացառությամբ ᵈU.GUR-ի, տրված են միայն ըստ բնակավայրերի: Վերոհիշյալ ստորաբաժանումները միմյանցից առանձնացված են տողանջատիչ գծերով, որոնք արվել են տեքստը կազմող դպրի կողմից:*

*Բնագրի ամբողջական հրատարակությունը բերվում է Ա. Քոսյանի թարգմանությամբ:*

*KUB, XXVI, 39*

*ԴԿ I*

*........... Նրա մոտ եթե գնաս, [.......*
*Կամ եթե ես/ինձ [.............*
*(եթե) Թաքցնե[ս]: Եվ նույն[իսկ .........*
*Դու չ[...........*
*չ[.........*

*ՀԿ IV*

*[.......*
*[ .................. ես .......]-եցի: .......*
*[............... ես պայմանագիր] կազմեց[ի: ...........]*
*[............... Եվ աՀ]ա այ[ս բանի համար]*
*[1000 աստվածների խորհրդի] կանչեց[ինք]:*

*. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .*

*[Երկնային Արևի աստվածը, Ա]րիննայի [Արևի աստվածը, Խաթթիի Ամպրոպի աստվածը],*

*[Հալեպի Ամպրոպի աստվածը, Ց]իպպալ[անդայի Ամպրոպի աստվածը, ........?],*

*[...............-ի Ամպրոպի աստվածը], Պիտտ[իյարիգայի] Ամպրոպի աստվածը, [Սամուխայի Ամպրոպի աստվածը],*

*[................-ի Ամպրոպի աստված], Սապ[ինուվայի Ամպրոպի աստված, [............-ի Ամպրոպի աստված],*

*[...............-ի Ամպրոպի աստված], Լիխցինայի [Ամպրոպի աստված, ...............-ի Ամպրոպի աստված]:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*[Հովանավոր աստված, Խաթթիի հովանավոր աստված], Կարախ[նայի հովան]ավոր աստված [...........-ի հովանավոր աստված],*

*[......................], Էա աստված, [Դամկ]ին[ա] աստված,*

*[Իսխարան՝ Թագուհին, երդմ]ան [աստվածուհին], Ց[ա]րրին,*

*[Ցապպանա աստված?], Ասկասեպան՝ [Թագ]ուհին? .....*

*[.........................], Տել[իպ]ինուս աստված,*

*[Պիրվա աստված?, Լուսնի աստված?]՝ պայմանագր[ի տերը], Իշտարը,*

*[........................], Նինգալ աստվածուհին, լ[ուլախխի]ների աստվածները,*

*[խաբիր]ուների [աստվածները], Լել[վանի] աստվածուհին, անդրաշխարհի Արևի աստվածուհին,*

*[Անկուվայի] Կատախխա աստված, [Կատ]ապայի «Թագուհին»,*

*[Սամու]խայի Աբարա աստված, [Խուրմ]այի Խանտիտա[ssու] աստված,*

*[Տախուր]պայի Ամմամմա աստված, [Դուննայի ալլարա]ս աստված,*

*[Խուպ]իսնայի Խուվասսանն[ա] աստված, Ս/Տամնիվա [քաղաքի.....աստված]*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*[արա]կան սեռի [աստվածները], իգական սեռի աստվածները, ողջ [Խաթթի] երկրի,*

*[ամբ]ողջ երկինքը, անդրաշխարհը, լեռները, [գետ]երը, աղբյուրները,*

*ողջ $^{d}$KASKAL.KUR.MES-ը, մեծ ծ[ո]վը:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Հայասայի U.GUR [աստված], Պատտեու(-)[.....] քաղաքի Իշտար աստվածուհին,*

*(գրված չէ)*

*Լախիրխիլա քաղաքի [...–ս/]տաննուս [աստված], [.... քաղաքի] Ցագգա(-) [......] աստված,*

*Արնիյա քաղաքի [Ամպրոպի աստված], Կամ?-[..........-ա]ն?-ցե?-ն[ա] քաղաքի Տարումուս աստված,*

*Պախխուտեյա քաղաքի [Ամպրոպի աստված], Տերիտտիտունի[ս] աստված*

*Տամատտա քաղաքի, Գազու[?] քաղաքի Ունագաստաս աստված,*

*Արխիտա քաղաքի* takšannaš *Ամպրոպի աստված, Բալտայք աստված*

*Դուգգամանա քաղաքի, Պարրայա քաղաքի Ունագաստաս աստված,*

*Գասմիյախա քաղաքի [...ր]ա?խուխուս աստված,*

*Սիլլ[ի?-x]-լ[ի? աստված .......... քաղաքի]:*

## ԽԵԹԱ-ԼՈՒՎԻԱԿԱՆ ՀԻԵՐՈԳԼԻՖ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՄԱՍԻՆ

***Հայկական լեռնաշխարհի արևմուտքում՝ Եփրատի հովտում, Ք.ա. II–I հազարամյակներում կիրառվել է խեթա-լուվիական մեհենագրությունը (հիերոգլիֆիկան): Այդ գրով առաջին արձանագրությունները նոր ժամանակներում հայտնի են դարձել XIX դարի երկրորդ կեսին՝ սկիզբ դնելով գրային համակարգի ուսումնասիրությանը: Սկզբնական շրջանում հայտնվել էր կարծիք, որ խեթա-լուվիական հիերոգլիֆների լեզուն կարող է լինել հնագույն հայերենը (գերմանացիականավոր գիտնական Հ. Ենսենը անգամ դրանք փորձեց ընթեր-***



**Խեթա-լուվիական արձանագրություն Մալաթիայից**

*ցել Հայերեն)։ Սակայն տարիներ անց պարզ դարձավ, որ դրանք գրված են ոչ թե Հայերենով, այլ Հայերենին մոտ ազգակից Հնդեվրոպական լեզուներից մեկով՝ լուվիերենով։*

*Խեթա-լուվիական Հիերոգլիֆ արձանագրությունները Հայագիտության Համար ունեն եռակի կարևորություն։ Նախ՝ լինելով Հայերենին մոտ ազգակից լեզվի Հուշարձաններ՝ կարևոր սկզբնաղբյուրներ են վաղնջաՀայերենի ուսումնասիրության Համար, ապա՝ արժեքավոր վկայագրեր են Հայաստանի (Հատկապես արևմտյան շրջանների) Ք. ա. II-I Հազարամյակների պատմության վերականգնման տեսանկյունից, և ի վերջո՝ կիրառվելով նաև Հայկական լեռնաշխարհում՝ նպաստել են նախամաշտոցյան Հայաստանում գրային մտածողության զարգացմանը։*

*Ներկայացվող բնագրերը բերում ենք ըստ ժամանակագրական Հերթականության, չվերծանված նշանների փոխարեն նշվում են դրանց Համարներն՝ ըստ Է. Լարոշի նշանացանկի)։ Ենթաբաժնի բնագրերի թարգմանությունը կատարել է Ա. Ե. Մովսիսյանը)։*

1.

*Արձանագրությունը գտնվել է Փոքր Հայքի տարածքից (ԿարաՀյույուք Հնավայր)։ Թարգմանությունը տրվում է ըստ* P. Meriggi, Manuale di eteo geroglifico, II, Testi 2-3, Roma, 1975, № 101; **J. D. Hawkins,** Corpus of Hieroglyphic Luwian Inscriptions, vol. 1, Inscriptions of the Iron Age, Berlin-New York, 2000, ***էջ 288-295, աղ. 133-134)։***

*(Դիմացի կողմը)*

*«Գավաթ»[1] երկրի Ամպրուպ-աստծուն (այս) կոթողը նվիրեց Արմանանիսը՝ «կարասների մարդկանց» տերը, այն ժամանակ,*
*երբ Արի-Թեշուբը՝ Մեծ արքան[2], եկավ «Գավաթ» երկիր։*
*Նա գտավ քաղաքը դատարկ,*
*և նա նստեց տեղում,*
*(կամ ՝ և նա նստավայր Հաստատեց)*
*...*
*...*
*... նա վերցրեց։*

*... նա հիմնեց(?),*

*նա(?) բարելավեց «Գավաթ» երկրի տներն (ու) քաղաքները:*

*Ես սիրելի(?) էի «Գավաթ» երկրի Ամպրոպ-աստծուն և ինքս ինձ աստծուն ես ...(?)եցի:*

*Իմ կողմից «Գավաթ» երկրի Ամպրոպ-աստվածը պաշտվում էր ամենուր ...(?) հետ,*

*և իմ երկրներում ես(?) հանձնեցի քաղաքները «Գավաթ» երկրի Ամպրոպ-աստծուն,*

*(և) ես(?) հիմնեցի ... :*

*... աստվածը ...(?) իմ տնից*

*ես(?) տոնեցի ... :*

*(Աջ կողմը)*

*«Գավաթ» երկրում երեք քաղաքներ՝ Լու/իկարաման[3], Հանթ-...փիյան (և) Ցու(վա)ման տրվեց ինձ տիրոջ կողմից:*

*Ես պատրաստեցի (234) մի տուն (263)-TANA-ի*

*... ես ...(?)եցի,*

*ես վերցրեցի ... :*

*Պետք է չլինի որևէ վեճ իմ դեմ,*

*(Ձախ կողմը)*

*դարպասների դեմ (?) թո՛ղ չլինի (293) (469):*

*Ով էլ որ լինի ... իմ տանը կամ քաղաքում*

*կամ տեղավորվի (293) (469),*

*թո՛ղ նրան մեղադրի Ամպրոպ-աստվածը «Գավաթ» երկրի:*

*1. Երկրանունը գրվում է «Գավաթ, Թաս» գաղափարագրով և հայտնի չէ, թե որ տեղանունն է ծածկագրված այդ գաղափարագրով:*

*2. Արքայի անունը գիտական գրականության մեջ ընթերցվել է մի քանի տար - բերակով՝ Արի-Թարխունտաս, Ցարրիթարխունտաս, Իր-Թեշուբ (Թարխունտաս և Թեշուբ դիցանունները գրվում էին միևնույն՝ ամպրոպի աստծո գաղա-փարագրով): Արձանագրությունից (որը թվագրվում է Ք. ա. XII դարի վերջերով) ակնհայտ է, որ նա ոչ թե տեղական կառավարիչ էր, այլ մեծ երկրի տիրակալ, որի մեջ էր ընդգրկված նաև Մելիդը: Այդ իսկ պատճառով մեզ հավանական է թվում նրա նույնացումը Ք.ա. XII դարի կեսերին հիշատակվող Սուբարտուի արքա Արի-Թեշուբի հետ (A. R. Millard, Fragments of Historical Texts from Ninveh: Middle*

*Assyrian and Later Kings, "Irag", 1970, vol. XXXIII, P. 2, 1970, էջ 172)։*

*3. Կարծիք կա, որ Լու/իկարաման նույն խեթական աղբյուրների Թա/եգարաման է (**А. В. Косян**, Лувийские царства Малой Азии, Ереван, 1994, с. 22-23)։*

**2.**

***Արձանագրությունը գտնվել է Փոքր Հայքի տարածքից (Կարա-Հյույուք հնավայր։ Թարգմանությունը տրվում է ըստ*** **P. Meriggi,** Manuale di eteo geroglifico, II, Testi 2-3, Roma, 1975, № 105; **J. D. Hawkins,** Corpus of Hieroglyphic Luwian Inscriptions, vol. 1, Inscriptions of the Iron Age, Berlin-New York, ***2000, էջ 295-299, աղ. 135-138)։***

*Մեծն Ամպրոպ-աստվածը, Հեփաթու մեծ դիցուհին, Սաուսմա աստվածը մեծ.*

*Ռունթիյաս (?)՝ Թոռը Կունցի-Թեշուբի՝ Մեծ Արքայի՝ Կարկամիշի Հերոսի, որդին «Բռունցք»-միլիի[1], Մալիցի[2] քաղաքի երկրի տիրակալը։*

*Թաիթա (?) քաղաքից Ցինափի (?) լեռները, Նահարասա (և) Նամա... Ես անջատեցի (առանձնացրեցի),*

*և ...*

*և ... քաղաքը Ես հիմնեցի.*

*Ինձ աստվածները մեծացրեցին (դարձրեցին մեծ),*

*և այս վայրերը ... Ես հիմնեցի.*

*Ով վնասի այս արձանագրությունը,*

*նրան թո՛ղ Մեծն Ամպրոպ-աստվածը, մեծն Հեփաթուն և մեծն Սաուսման դատեն։*

*1. Մելիդի թագավորության նշանավոր տիրակալներից է, որի անունը գրվում է «Բռունցք» գաղափարագրով և «-միլի» հնչյունային վերջավորությամբ. անվան լիարժեք վերականգնումն առայժմ չի հաջողվել։*

*2. Մելիդ-Մալաթիա քաղաքի անվանաձևերից մեկն է։*

3.

***Մալաթիա I: Թարգմանությունը տրվում է ըստ* P. Meriggi,** Manuale di eteo geroglifico, II, Testi 2-3, Roma, 1975, № 105; **J. D. Hawkins,** Corpus of Hieroglyphic Luwian Inscriptions, vol. 1, Inscriptions of the Iron Age, Berlin-New York, 2000, ***էջ 318-319, աղ. 155:***

*Սրանք նետաձգություններն (են) Հալփասուլուփիսի՝ Թարասի (?) թոռան, Հերոսի, Մալացի քաղաքի տիրակալի, Վասու(?)-ուն-տիյասի(?) որդու՝ արքայի(?):*

4.

***Մալաթիա III: Թարգմանությունը տրվում է ըստ* P. Meriggi,** Manuale di eteo geroglifico, II, Testi 2-3, Roma, 1975, № 107; **J. D. Hawkins,** Corpus of Hieroglyphic Luwian Inscriptions, vol. 1, Inscriptions of the Iron Age, Berlin-New York, ***2000, էջ 321-322, աղ. 156:***

Սրանք նետաձգություններն (են) Մարիտիսի՝ Սուվարամիսի որդու, ......(?):

## ԱՍՈՐԵՍՏԱՆՅԱՆ ՍԵՊԱԳԻՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՑԵՂԵՐԻ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Հայկական լեռնաշխարհի հնագույն բնակչության, այստեղ ծնունդ առած վաղ-պետական կազմավորումների և հինարևելյան խոշոր քաղաքակրթությունների հետ վերջիններիս ունեցած փոխհարաբերությունների մասին, շնորհիվ ասորեստանյան սեպագիր արձանագրությունների, մեզ են հասել բացառիկ արժեքավոր և ծավալուն տեղեկություններ: Դրանք վերաբերում են լեռնաշխարհի քաղաքական պատմությանը, հոգևոր և նյութական մշակույթին, սոցիալ-տնտեսական և հասարակական հարաբերություններին՝ սկսած Ք. ա. XIV դ. վերջերից ընդհուպ մինչև VII դ. երկրորդ կեսը:***
***Ստորև բերված տեքստերի ընտրությունը պայմանավորված է ոչ միայն հիշյալ պատմական ժամանակաշրջանն ամբողջությամբ ներկայացնելու, այլև ասորեստանյան դպրության մեջ հանդիպող***

տարբեր ոճի և կիրառության տեքստերից օրինակներ ունենալու ցանկությամբ: Ըստ այդմ, ընթերցողին ներկայացվում են օրինակներ արքայական հանդիսավոր արձանագրություններից, արքունի տարեգրություններից, առանձին կոթող-վիմագրերից, ասորեստանյան արքունիքին ուղղված ձեռագիր զեկուցագրերից, «հանրագումարային», «հետախուզական», «գուշակային» բնույթի տեքստերից և այլն:

Ժամանակագրական առումով ներկայացված օրինակները պատկանում են միջին և նոր ասորեստանյան դարաշրջաններին (համապատասխանաբար չորս և տասնվեց տեքստ): Ասորեստանյան արքաների ժամանակագրությունը տրվում է ըստ **J. Boese, G. Wilhelm,** Aššur-dan I., Ninurta-apil-ekur und die mittelassyrische Chronologie, “Wiener Zeitschrift für die Kunst des Morgenlandes”, Vienna, 1979, Bd. 71, էջ 19–38 ուսումնասիրության: Նոր ասորեստանյան տեքստերը, միաժամանակ, վերաբերում են մասնավորապես Ուրարտու պետության պատմության այս կամ այն ժամանակաշրջանին, այս կամ այն արքայի գահակալությանը: Ըստ այդմ, Ուրարտուի՝ Ք. ա. IX դ. պատմությանն են վերաբերում երեք տեքստ (Թիվ 5–7): Արգիշտի I, Սարդուրի II արքաների ժամանակաշրջանը ներկայացնում են երեք տեքստեր (համապատասխանաբար՝ Թիվ 8 և 9–10): Ռուսա I-ի դարաշրջանին են վերաբերում միանգամից յոթը տեքստ (Թիվ 11–17): Արգիշտի II արքայի գահակալության շրջանին են վերաբերում երկու, իսկ Ռուսա II-ին՝ մեկ տեքստ (Թիվ 18–19 և 20):

Տեքստերի թարգմանությունները տրված են ասորեստանյան սկզբնաղբյուրների վերջին գիտական հրատարակությունների և կազմողի անձնական դիտարկումների հիման վրա: Մեջբերված տեքստերին տրված են սահմանափակ թվով ծանոթագրություններ և մասնակի վերլուծություններ: Ասորեստանյան սեպագիր սկզբնաղբյուրների՝ Հայկական լեռնաշխարհին վերաբերող տեքստերի համահավաք ժողովածուն, համապատասխան տեքստաբանական աշխատանքով և պատմագիտական ետնախորքով, հրատարակության է պատրաստվում Ե. Հ. Գրեկյանի կողմից, որն էլ կատարել է սույն բաժնում ներկայացվող բնագրերի թարգմանությունը:

1․

## ՈՒՐՈՒԱՏՐԻ ԵՐԿՐՆԵՐՆ ԸՍՏ ՍԱԼՄԱՆԱՍԱՐ I-Ի

***Հանդիսավոր արձանագրություն: Հայտնաբերվել է Աշշուրից (ներկայիս Կալաթ-Շերկատ հնավայրը Իրաքում), պահվում է Ստամբուլի Հին Արևելքի հուշարձանների թանգարանում: Տեքստը կազմվել է ասորեստանյան Սալմանասար (Շուլմանու-աշարեդ) I արքայի գահակալության շրջանում (Ք. ա. 1263-1234 թթ.):***

***Արձանագրության գոյության մասին առաջին անգամ նշվում է Աշշուրի պեղումները ներկայացնող Վալտեր Անդրեի նամակներում: Թարգմանությունը տրվում է ըստ A. K. Grayson,*** Assyrian Rulers of the Third and Second Millennia BC (to 1115 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. I, Toronto-Buffalo-London, ***1987, A.0.77.1 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

*(1-22ա) Շուլմանու-աշարեդը, ում կարգել է Էնլիլ[1] (աստվածը), սուրբ տեղապահը Աշշուր[2] (աստծու), (նա) ում կարգել են աստվածները, տիրակալը, Իշթար[3] (աստվածուհու) սիրելին, նա, որն անաղարտ է պահում ծեսերն ու գոհաբերությունները, ..............., աննկուն միապետը, որը գործում է Աշշուր աստծու և մեծ աստվածների՝ իր տերերի աջակցությամբ, և չունի (իրեն) հակառակորդ, նվաճողը թշնամական երկրների՝ վերևում, և (թե) ներքևում[4], տեր, որի ոտքերին Աշշուր աստվածն ու մեծ աստվածները խոնարհեցրին բոլոր արքաներին և տիրակալներին:*

*(22բ-28ա) Երբ Աշշուր (աստվածը)՝ (իմ) տերը, անկեղծորեն ընտրեց ինձ որպես իրեն հետևորդ[5], տվեց ինձ գայիսոն, զենք և գավազան՝ սևագլուխ ժողովրդին[6] ճշմարտորեն (կառավարելու), և պարգևեց ինձ ճշմարիտ թագը տիրակալության, այդ ժամանակ, իմ տեղապահության[7] սկզբում, Ուրուատրի երկիրն ապստամբեց իմ դեմ:*

*(28բ-46) (Աղոթքով) դիմեցի ես Աշշուր աստծուն և մեծ աստվածներին, իմ տերերին: Ժողովեցի իմ զորքերը և բարձրացա դեպի վեր նրանց հզոր լեռները: Խիմմե, Ուատկուն, Մաշգուն[8], Սալուա, Խալիլա, Լուխա, Նիլիպախրի[9] և Զինգուն (երկրները)՝ ութ երկրներ և նրանց աշխարհազորը ես նվաճեցի, նրանց քաղաքներից հիսունմեկը ես կործանեցի, այրեցի, նրանց մարդկանց և ունեցվածքը (ավար) տարա: Աշշուրի՝ իմ տիրոջ ոտքերին ողջ Ուրուատրի երկիրը*

*երեք օրում խոնարհեցրի: Նրանց երիտասարդների (չարքում) ընտրասերում արեցի և ընտրեցի նրանց (սերուցքը)՝ ինձ մոտ ծառայելու: Լեռների ծանր հարկը նրանց վրա ես ընդմիշտ հաստատեցի:*

*(46-53) Արինա[10] քաղաքը, սրբազան քաղաքը՝ հիմնադրված (մայր) ժայռի վրա, որը նախկինում ապստամբել էր (և) մերժել Աշշուր (աստծուն), Աշշուրի և մեծ աստվածների աջակցությամբ ես նվաճեցի, ավերեցի այդ քաղաքը և աղ չաղ տվեցի վրան, հավաքեցի այդ հողից և կուտակեցի (այն) Աշշուրի՝ իմ քաղաքի մեծ դարպասի առջև՝ սերունդների համար:*

*(54-55) Այդ նույն ժամանակ Աշշուրի՝ իմ տիրոջ ոտքերին ես խոնարհեցրի ողջ Մուծրու[11] երկիրը:*

* * *

*(56-78ա) Երբ մեծ աստվածների հրամանով (և) Աշշուրի՝ իմ տիրոջ, վեհ ուժով արշավեցի (ես դեպի) Խանիգալբատ[12] երկիրը, բացեցի ամենադժվար ճանապարհներն ու անցումները: Շաթթուարան[13]՝ Խանիգալբատ երկրի արքան, խեթերի և ախլամեացիների[14] զորքերի աջակցությամբ, գրավեց իմ (ճանապարհին ընկած) անցումներն ու ջրի աղբյուրները: Երբ իմ բանակը ծարավ էր և հոգնած[15], նրանց բանակը հարձակում գործեց կատաղի ուժով: Բայց ես հակահարված տվեցի և նրանց պարտության մատնեցի: Նրանց ընդարձակ բանակից անհամար թվով (մարդկանց) ես կոտորեցի: Ինչ վերաբերում է նրան[16], ես հետապնդեցի նրան (իմ) նետերով մինչև մայրամուտ: Ես կոտորեցի նրանց բազմությունը, (բայց) նրանցից 14.400 հոգու, (որոնք) կենդանի էին (մնացել), ես կուրացրի (և գերի) տարա: Ես գրավեցի նրա ինն ամրացված պաշտամունքի կենտրոնները, ինչպես նաև նրա մայրաքաղաքը[17], և ես նրա 180 քաղաքները ավերակ բլուրների վերածեցի:*

*(78բ-87) Խեթերի և ախլամեացիների՝ իր դաշնակիցների բանակները ինչպես ոչխարների (հոտ) ես մորթեցի: Այդ ժամանակ նվաճեցի ես նրանց քաղաքները՝ Թա՛իդուից մինչև Իրրիդու[18], ողջ Կաշիարի լեռ(ներ)ը մինչև Էլուխաթ[19], Սուդու[20] ամրոցը, Խարրանու[21] ամրոցից մինչև Կարքեմիշ[22], որը Եփրատի ափին է: Ես տիրեցի նրանց երկրներին, իսկ նրանց մնացյալ քաղաքները հրի մատնեցի:*

* * *

*(88–91) Այնուհետ կուտիները, որոնց թիվը, ինչպես աստղերինը երկնքում, ոչ ոք չգիտեր, (և որոնք) վարժ են սպանելու (գործում), ըմբոստացած շրջվեցին իմ դեմ (և) թշնամանք սերմանեցին:*

*(92–106) (Աղոթքով) դիմեցի ես Աշշուր աստծուն և մեծ աստվածներին՝ իմ տերերին, և նրանք տվեցին ինձ չիտակ պատասխան՝ հաստատակամ «այո»[23]: Ես թողեցի իմ բանակի ճամբարը՝ վերցնելով մեկ երրորդն իմ լավագույն մարտակառքերի, և նետեցի (դրանք) նրանց դեմ ճակատամարտի: Նրանց անհամար զինվորների կյանքը ինչպես ջուր ես թափեցի՝ (սկսած) Ուրուատրի երկրի սահմանից մինչև Կութմուխու[24] երկիր՝ հեռավոր մի շրջան, անցնելով երկար ճանապարհ: Ես լցրեցի ընդարձակ դաշտը նրանց զինվորների մարմիններով: Ես իմ Աշշուր քաղաքը բերեցի նրանց գերիներին, նրանց (կենդանիների) հոտերը, բռնված վայրի գազանների և ունեցվածք:*

*(109–111) (Ես) հավատարիմ հովիվ (եմ), (նա), ում անունը Անու[25] և Էնլիլ (աստվածները) (կյանքի) կոչեցին հավերժ, ես անմար սերունդ եմ, (ես) նա (եմ), որը գիտե աստվածներին, որդին (եմ) Ադադ-նիրարիի[26], կարգված Էնլիլ աստծու կողմից, Աշշուր (աստծու) տեղապահը, (որը) որդին (է) Արիկ-դին-իլիի[27], (որը) նույնպես կարգված (էր) Էնլիլ (աստծու) կողմից և տեղապահն (էր) Աշշուր (աստծո):*

(112–168: Հետևում է Աշշուր քաղաքում արքայի կատարած տաճարաշինության նկարագրությունը: Տեքստը եզրափակվում է անեծքի բանաձևով: Թվագրվում է Մուշշալլիմ-Աշշուրի էպոնիմատի[28] տարով[29]):

*1. Շումերական դիցաբանության մեջ աստվածների երկրորդ սերնդի գլխավորն է, սերնդի հայրը և դիցարանի գերագույն աստվածը:*

*2. Ժայռ(ածին) և ծառակերպ աստված, նույնանուն քաղաքի աստվածը: Հետագայում՝ միջինասորեստանյան դարաշրջանից սկսած, դարձավ ասորեստանյան տերության գերագույն աստված, աստվածների հայր և դիցարանի առաջնորդ, արքա-աստված: Ուրարտուի Խալդի աստծո ասորեստանյան «կրկնակը»:*

*3. Մայր աստվածուհի: Սոսկ անվանական կապ ուներ սեմական Էշթար/Իշթար աստվածուհու հետ՝ շարունակելով կրել տեղի հնագույն մայր աստվածուհուն՝ Նինվեի Շա(վ)ուշայի բնորոշ պաշտամունքային գծերը: Աստվածուհու մասին ամփոփ տե՛ս* **C. Wilcke, U. Seidl,** *Inanna/Ištar, Reallexikon für*



**Սալմանասար III-ի արձանագրությունը**

Assyriologie (Hrsg. D.O. Edzard), Berlin - New York, 5(1/2), 1976, էջ 74–89.

4. Այս պատկերավոր արտահայտությամբ միջագետքյան սեպագիր դպրությունը նկատի է ունեցել Եփրատ և Տիգրիս գետերի հոսանքի ուղղությունը՝ «վերևից» (հյուսիս-արևմուտք) «ներքև» (հարավ-արևելք):

5. Բառացի՝ «որպեսզի երկրպագեմ իրեն»:

6. Մարդկային ցեղի, մարդկության պոետիկ բնորոշումը:

7. Միջինասորեստանյան դարաշրջանում ասորեստանյան պետությունը կառավարվում էր աստվածապետական սկզբունքով, ըստ այդմ, պետության առաջնորդները համարվում էին աստվածների տեղապահները երկրում, նրանց իշխանությունը՝ դիտվում տեղապահություն:

8. Հնարավոր է ընթերցել նաև Բարգուն:

9. Հնարավոր է ընթերցել նաև Ծ/Ջալլիպախրի:

10. Քաղաք Հայկական լեռնաշխարհի հարավում, Արևելյան (Հայկական) Տավրոսներում:

11. Երկիր Ասորեստանից հյուսիս, համադրվում է Մուծածիր երկրի հետ (**И. М. Дьяконов,** Ассиро-вавилонские источники по истории Урарту, "Вестник древней истории", М., 1951, № 2-4, № 1, прим. 17): Չշփոթել Եգիպտոսի հետ (Մուծրու):

12. **Խանիգալբատ** (Միտաննի) – Հին Արևելքի խոշոր պետություններից: Առավելագույն հզորության է հասել Ք. ա. XV–XIV դդ.:

13. Խոսքը վերաբերում է Խանիգալբատի արքա Շաթթուարա II-ին (Ք. ա. 1240-ական թթ.): Թվագրությունն ըստ **G. Wilhelm,** Grundzüge der Geschichte und Kultur der Hurriter, Darmstadt, 1982, էջ 141:

14. **Ախլամու, «ախլամեացիներ»** – Հյուսիսային Ասորիք ներթափանցած սեմախոս արամեական ցեղերին ասորեստանցիների տված անվանումը: Նրանց մասին մանրամասն տե՛ս **E. Lipinski,** The Arameans: Their Ancient History, Culture, Religion, Leuven - Paris - Sterling, 2000:

15. Բառացի՝ «իմ բանակի ծարավ և հոգնած լինելու պատճառով»:

16. Նկատի է առնվում Խանիգալբատի արքա Շաթթուարա II-ն:

17. Բառացի՝ «քաղաքը, որտեղից նա կառավարում է»:

18. **Թա՛իդու և Իրրիդու –** Խանիգալբատ (Միտաննի) պետության քաղաքական կենտրոններից: Տեքստը նկատի ունի Եփրատի մեծ ոլորանից Խաբուր ձգվող տարածքը:

19. Ամրոց Կաշիյարի լեռների շրջանում, ներկայիս Դիարբեքիրից հարավ-հարավ-արևելք:

20. Երկիր և քաղաք Եփրատ և Տիգրիս գետերի միջև, պատմական Հայաստանի Ծոփք և Աղձնիք աշխարհների հարևանությամբ, մոտավորապես համապատասխանել է ներկայիս Կարաջա լեռների շրջանին:

21. **Խառան** – Հյուսիսային Ասորիքի հնագույն քաղաք-պետություններից, Բալիխ գետի վերին հոսանքի շրջանում:

22. **Կարգամիս, Կարքեմիշ** – Հյուսիսային Ասորիքի հնագույն քաղաք-պետություններից: Տվյալ ժամանակաշրջանում գտնվել է Խեթական կայսրության կազմում որպես քույր-թագավորություն: Ներկայիս Ջերաբլուս հնավայրը:

23. Սա վկայում է, որ արշավանքն իրականացվել է աստվածների հավանությունը ստանալուց հետո, այսինքն՝ իրականացվել են համապատասխան գուշակություններ

24. **Կուդմուխի** (Կադմուխի) – երկիր Տիգրիսի վերին հոսանքի շրջանում: Համադրվում է Կադմեա տան հետ: Ամփոփ տե՛ս **Н. В. Арутюнян,** Топонимика Урарту, с. 98-99:

25. Շումերական դիցաբանության առաջին սերնդի գլխավոր աստվածությունը, մարմնավորել է երկինքը:

26. Սա ասորեստանյան արքա Ադադ-Նիրարի I-ն է, իշխել է Ք. ա. 1295-1264 թթ.:

27. Ասորեստանյան արքա: Կառավարել է Ք. ա. 1307–1296 թթ.:

28. **Էպոնիմ** (աքադերեն՝ limmu) – անվանադիր գործառույթներով օժտված անձ, երբ տարին անվանակոչվում էր նրա անունով:

*29. Արձանագրության կրկնօրինակներից մեկը պարունակում է այլ թվագրում՝ Աշշուր-նադին-շումաթիի էպոնիմատի տարի:*

## *2.*

## *ՆԱԻՐԻ ԵՐԿՐԻ ԱՌԱՋԻՆ ՀԻՇԱՏԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԱՍՈՐԵՍՏԱՆՅԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ*

***Հանդիսավոր արձանագրություն: Հայտնաբերվել է Աշշուրից (ներկայիս Կալաթ-Շերկատ հնավայրը Իրաքում), պահպանվել է հատվածաբար, տեքստը վերականգնվում է տարբեր կրկնօրինակների համադրությամբ: Կրկնօրինակների մեծ մասի գտնվելու վայրն այժմ անհայտ է: Մնացյալ օրինակները պահվում են տարբեր թանգարաններում (Բեռլինի Առաջավորասիական, Ստամբուլի և այլն): Տեքստը կազմվել է ասորեստանյան Թուկուլթի-Նինուրտա I արքայի գահակալության շրջանում (1233–1197):***

***Արձանագրության գոյության մասին առաջին անգամ նշվում է Աշշուրի պեղումները ներկայացնող Վալտեր Անդրեի նամակներում: Թարգմանությունը տրվում է ըստ* A. K. Grayson,** Assyrian Rulers of the Third and Second Millennia BC (to 1115 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. I, Toronto-Buffalo-London, ***1987, A.0.78.1 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

*(Col. ii 14 – iii 7) Իմ իշխանության [սկզբում] արշավեցի ես դեպի Ուկ[ումենու[1]] երկիր: Ողջ Կուտու երկիրը [վերածեցի] ավերակ բլուրների, (կարծես թե) ջրհեղեղն էր (դա արել), (և) ավազահողմի օղակով շրջապատեցի ես նրանց բանակը: Այդ ժամանակ նրանք խորդուբորդ և լեռնոտ տեղանքում համախմբվեցին իմ բանակի դեմ: Նրանք մոլեգնորեն դիրքեր գրավեցին՝ (պատրաստվելով) զինված ընդհարման: Հենվելով Աշշուրի և մեծ աստվածների՝ իմ տերերի վրա, ես հարվածեցի և նրանց պարտության մատնեցի: Լեռների անձավներն ու կիրճերը նրանց մարմիններով լցրեցի: Նրանց դարպասների առջև, ինչպես հացահատիկի կույտ, դիզեցի (ես) նրանց մարմինները: Նրանց քաղաքներն ավերեցի, ամայացրի (և) վերածեցի ավերակ բլուրների: [...] (Այսպես) ես դարձա տերը ողջ Կուտու երկրի: Ուրախությամբ և գերազանցությամբ կանգնեցի ես նրանց վրա: Աբուլեի՝ Ուկումենու երկրի արքայի (մարդկանց) բազմությունը ես*

*գերեցի (և) կապկպված բերեցի իմ քաղաքը՝ Աշշուր: Ես ստիպեցի նրանց երդվել երկնքի և անդրաշխարհի մեծ աստվածներով, հաստատեցի նրանց վրա [ծանր] լուծը իմ տիրակալության (և այնուհետ) արձակեցի նրանց՝ վերադառնալու իրենց երկրները: [...] ապստամբ [քաղաքները] ես խոնարհեցրի իմ ոտքերին և պարհակներ հաստատեցի նրանց վրա: Ամեն տարի, հանդիսությամբ, իմ Աշշուր քաղաքում նրանց մեծարժեք հարկը ես ստացա:*

* * *

*(Col. iii 8 – 11) Հեռավոր Կուտու երկիրը, որի ճանապարհները խիստ դժվարին են (և) որի տարածքը [անհարմար է] իմ բանակի տեղաշարժի համար, նրանք[2] [...] սարսափեցին իմ զենքի դաժանությունից և խոնարհվեցին իմ ոտքերին: Ես հարկ վերցրի և (նաև) նրանց վրա հարկ հաստատեցի:*

* * *

*(Col. iii 12 – 20) Այդ ժամանակ արշավեցի դեպի ես Շարնիդա երկիր (և) դեպի [Մե]խրու[3]: Կուտու երկրի բանակի աջակցությամբ, որը Աշշուրն ու մեծ աստվածները հանձնել էին ինձ, Մեխրու երկրում հզոր ծառեր ես հատեցի և Աշշուր՝ իմ քաղաքը (դրանք) բերեցի: Իմ տերունական պալատը, որը ես սիրում եմ, Մեխրու երկրի այդ գերաններով ես նորոգեցի:*

* * *

*(Col. iii 21 – 29) Այդ նույն տարում Կադմուխու երկրի հինգ ամրացված քաղաքները՝ անհնազանդ կենտրոնները, որոնք խաբուսիկ խաղաղության ընթացքում դուրս էին վանել իմ ժողովրդին և թալանել իմ երկիրը, ես նվաճեցի առատության ժամանակ: Ինչպես երկրաշարժ՝ նրանց տաճարները ես ճեղքեցի: Գերիներ (և) գույք ես տարա (և դրանք) իմ քաղաքը՝ Աշշուր բերեցի:*

* * *

*(Col. iii 30 – iv 23) Ողջ Շուբարու երկիրը՝ Կաշիարի լեռներից մինչև Ալզու[4] (ձգվող) ամբողջ (տարածքը), որը նախկինում,*

*Շուլմանու-աշարեդի՝ տիեզերքի արքայի, իմ հոր գահակալության ընթացքում, ապստամբել էր և մերժել հարկ (վճարել), միավորվեց մեկ հրամանի ներքո: (Ազոթքով) դիմեցի ես Աշշուր աստծուն և մեծ աստվածներին՝ իմ տերերին, (և) բարձրացա դեպի Կաշիարի լեռ(ներ)ը: Ողջ Շուբարու երկիրը, Ալզու երկիրը (և) նրանց դաշնակից արքաներին ես սանձեցի: Ես նվաճեցի Պուրուլիմզու[5] երկրի պաշտամունքի մեծ կենտրոնը: Նրանց[6] կենդանի այրեցի (և) նրանց բանակի մնացորդները ես գերեցի: Էխլի-Թեշուբի՝ Ալզու երկրի արքայի չորս հզոր մայրաքաղաքները (և) Ամադանու[7] երկրի վեց ապստամբ քաղաքները ես նվաճեցի: Ես դուրս տարա դրանցից գերիներ (և) ունեցվածք (և) իմ Աշշուր քաղաքը բերեցի: Էխլի-Թեշուբը՝ Ալզու երկրի արքան, սարսափեց իմ մեծության առջև և, վերցնելով իր պալատականներին ու որդիներին, լքեց նա իր ընդարձակ երկիրը, գաղտնորեն գնաց ամենահեռավոր սահմանը Նաիրի[8] երկրի՝ անհայտ մի երկիր: Նրա բանակի մնացորդները, որոնք փախել էին ճակատամարտից, սարսափելով իմ զենքի ուժից, փախան դեպի ժայռոտ լեռները՝ իրենց կյանքը փրկելու (համար): Նրանց 180 ամրացված քաղաքները ես ավերեցի, ամայացրի, այրեցի (և) վերածեցի ավերակ բլուրների: Ալզու, Ամադանու, Նիխանու, Ալայա, Թեփուրզու (և) Պուրուլիմզու երկրների տարածքը ես իմ երկրին հավելեցի: Ես նրանցից պատանդներ վերցրեցի, (նրանց) իմ ոտքերին խոնարհեցրի (և) պարհակներ հաստատեցի նրանց վրա:*

* * *

*(Col. iv 24 – 36) Այդ ժամանակ Տուլսինայից մինչև ...... լեռը, Շաշիլա և Մաշխաթ-շարրի քաղաքների միջև (ընկած տարածքը)՝ Փոքր Զաբ (գետի) այն ափին, Զուկուշքու (և) Լալլար լեռ(ներ)ից՝ ընդարձակ Կուտու երկրի շրջաններից մինչև ընդարձակ Լուլլումի[9] երկիր, Բաբխու[10] երկրից մինչև Կադմուխու երկիր (և) Շուբարուի բոլոր երկրները, ամբողջ Կաշիյարի[11] լեռ(ներ)ը մինչև Նաիրիի սահմանը (և) սահմանը Մ[ական[12]] երկրի, մինչև Եփրատ[13]՝ այս երկրները մեծ աստվածները հանձնեցին ինձ: Իմ (բոլոր) թշնամիներին [ես բերեցի] մեկ հրամանի ներքո:*

* * *

(Col. iv 37 – vi 22: Տրվում է արքայի կատարած շինարարական

աշխատանքների ամփոփ նկարագիրը: Տեքստը եզրափակվում է անեծքի ընդարձակ բանաձևով):

*1. **Կումմե** – երկիր Հայկական լեռնաշխարհի հարավում, Արևելյան (Հայկական) Տավրոսում, Արևելյան Տիգրիսից (այժմ՝ Բոհտան-սու) հարավ: Ամպրոպի աստծո (**Իշկուր-Թեշուբ(Թեյշեբա)-Ադադ**) պաշտամունքի հնագույն, համընդհանուր ճանաչում ունեցող կենտրոններից: Ամփոփ պատմության համար տե՛ս **W. Röllig,** Kumme, Reallexikon für Assyriologie (Hrsg. D. O. Edzard), Berlin - New York, 1980-1983 p. 336-337:*

*2. Նկատի է առնվում կութիներին:*

*3. **Շարնիդա և Մեխրի** – երկրներ Տիգրիսի վերին հոսանքի շրջանում: Մեխրին համադրվում է հին հայկական աղբյուրների Մեհրի-նարի հետ: Տե՛ս* **Н. В. Арутюнян,** Топономика Урарту, с. 143-144 *(նշվ. գրականությամբ):*

*4. **Ալզու** – խեթական աղբյուրներում հանդես է գալիս Ալշե, ուրարտական տեքստերում՝ Ալզի(նի) անվանումներով, նույնանում է պատմական Հայաստանի Աղձնիք նահանգին:*

*5. **Պուրուլիմզու** (Պուրուլումզի) – երկիր Տիգրիսի վերին հոսանքի շրջանում, Աղձնիքի հարևանությամբ:*

*6. Նկատի ունի բնակիչներին:*

*7. Երկիր Տիգրիսի վերի հոսանքի շրջանում, համադրվում է Մետինա լեռան հետ՝ Կարաջա լեռների և Մարդինի միջև, երբեմն նույնացվում է Մադեն քաղաքին ներկայիս Թուրքիայում (Էրգանի Մադեն):*

*8. Նաիրի երկրանվան առաջին հիշատակությունն է ասորեստանյան աղբյուրներում:*

*9. **Լուլլումի** (Լուլլուբու(մ), Լուլլու) – երկիր և ժողովուրդ Զագրոսյան լեռնաշղթայի հյուսիսում: Հետագա շրջանում երկրանունը կիրառվել է ընդհանրական նշանակությամբ, նույնպես և լուլուբեյներ անվանումը (լեռնաբնակ, բարբարոս, օտար):*

*10. **Բաբխու/ի, Բաբանախու/ի՝** (խուռի-ուրարտ. «լեռ(նային)» բառից)- լեռնային երկիր Հայկական լեռնաշխարհի հարավում, Արևելյան (Հայկական) Տավրոսում՝ Վանա լճից հարավ:*

*11. **Կաշիյարի լեռները** (շում. աղբյուրներում՝ Մաշու, անտիկ և հայկական աղբյուրներում՝ **Մասիուս, Մասիոն**) նույնանում են ներկայիս Մարդինի (Տուր Աբդին) լեռներին:*

*12. Մականը մոտավորապես համապատասխանում է ներկայիս Բահրեյնի տարածքին:*

*13. Բնագրում՝ «Փուրաթի»: Սովորաբար գետանունը գրվել է «Փուրաթթու»:*

*3.*

## *ԹԻԳԼԱԹՊԱԼԱՍԱՐ I-Ի ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀ. ՆԱԻՐՅԱՆ 60 ԱՐՔԱՆԵՐԸ*

***Տարեգրություն: Հայտնաբերվել է Աշշուրից (ներկայիս Կալաթ-Շերկատ հնավայրը Իրաքում), Տեքստը կազմվել է ասորեստանյան Թիգլաթպալասար (Թուկուլթի-ապալ-էշարրա) I արքայի գահակալության շրջանում (1114–1076):***

***Արձանագրության մասին առաջին անգամ հիշատակում է Օստին Հենրի Լեյարդը*** (**A. H. Layard**, Discoveries in the Ruins of Nineveh and Babylon, London, ***1853, էջ 581): Մեզ են հասել մի քանի կրկնօրինակներ, հրատարակվել են բազմիցս: Մեջբերվող կրկնօրինակը պահվում է Բեռլինի Առաջավորասիական թանգարանում: Թարգմանությունը տրվում է ըստ*** **A. K. Grayson**, Assyrian Rulers of the Early First Millennium BC (1114-859 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. II, Toronto-Buffalo-London, ***1991, A.0.87.1 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

*(Col. i, 1-8) Աշշուր աստվածը՝ մեծն տերը, որը ճշմարտորեն կառավարում է բոլոր աստվածներին, գայիսոն և թագ պարգևողը, իշխանության պահապանը, Էնլիլ աստվածը՝ տերը, արքան բոլոր Անուննակու[1] աստվածների, աստվածների հայրը, երկրների տերը, Սին[2] աստվածը՝ իմաստունը, լուսնային սկավառակի տերը, աստվածային գեղադեմ լուսնեղջյուրը, Շամաշ[3] աստվածը՝ դատավորը երկնքի (և) անդրաշխարհի, ......*

(Col. i, 9–27 տողերում հիշվում են շումերա-աքադական դիցարանի այլ աստվածներ և տրվում նրանց բնութագրերը):

* * *

*(Col. i, 28-38) Թուկուլթի-ապալ-էշարրան՝ հզոր արքան, տիեզերքի անզուգական արքան, (աշխարհի) չորս կողմերի արքան, բոլոր իշխանների արքան, տիրակալների տիրակալը, (գլխավոր) նախրապանը, արքաների արքան, մաքրագործման հոգատար քուրմը, որին հրամանով Շամաշ աստծուն տրվեց գայիսոնը սրբազան, և որն ուներ բացարձակ իշխանություն ժողովուրդների՝ Էնլիլ աստծո հպատակների նկատմամբ, հավատարիմ հովիվը, որի*

*անունը թևածեց իշխանների մոտ, փառաբանված առաջնորդը, որի զենքերը ինքը՝ Աշշուր աստվածը սրեց և որի անունը նա կանչեց հավերժորեն՝ հսկելու (աշխարհի) չորս կողմերը ...*

*(Հետևում են արքային փառաբանող խոսքեր):*

* * *

*(Col. i, 46-61) Աշշուր աստվածը (և) մեծ աստվածները, որոնք բարձրացրին իմ իշխանությունը, որոնք պարգևեցին զորություն և ուժ՝ որպես ինձ ճակատագիր, հրամայեցին ինձ ընդարձակել իրենց երկրի սահմանները: Նրանք դրեցին իմ ձեռքերին իրենց հզոր զենքերը՝ (ինչպես) հեղեղ ճակատամարտում: Ես հսկողության հասա (այն բոլոր) երկրների, լեռների, քաղաքների և արքաների նկատմամբ, որոնք թշնամի էին Աշշուրին, և ես հնազանդեցրի նրանց երկրները: Ես պայքարեցի նրանց 60 թագակիր առաջնորդների դեմ և հաղթեցի նրանց ճակատամարտում: Ես չունեմ հավասար(ը) ոչ ճակատամարտում, և ոչ պատերազմում: Ես տարածքներ հավելեցի Աշշուրին և մարդիկ՝ նրա բնակչությանը: Ես ընդլայնեցի իմ երկրի սահմանները և կառավարեցի նրանց բոլոր երկրները:*

* * *

*(Col. i, 62-88) Իմ գահակալության տարում, 20.000 մուշքեր[4], իրենց հինգ արքաներով, որոնք 50 տարի շարունակ իրենց ձեռքում էին պահում Ալզի և Պուրուլումզի երկրները (իսկ դրանք կրում էին Աշշուրի՝ տիրոջս հարկն ու տուրքը), (մուշքերը), որոնց ոչ մի արքա երբևէ ետ չէր մղել ճակատամարտում, վստահ իրենց ուժին, նրանք ցած թափվեցին (ինչպես անձրև) և գրավեցին Կադմուխի երկիրը: Աշշուրի՝ իմ տիրոջ օգնությամբ ես (մարտի) պատրաստեցի իմ մարտակառքերն ու բանակը, չսպասելով իմ թիկնազորին՝ ես անցա Կաշիյարի լեռան դժվարին տարածքը: Ես Կադմուխի երկրում կռվեցի նրանց 20.000 ռազմիկների և հինգ արքաների հետ: Ես նրանց պարտության մատնեցի: Ինչպես ամպրոպային աստվածություն՝ նրանց ռազմիկների մարմինները մարտի դաշտում կիտեցի (և) նրանց արյունը լեռների հովիտներում և դաշտերում հոսեցրի: Կտրեցի նրանց գլուխները (և) դիզեցի իրենց քաղաքների շուրջն ինչպես հացահատիկի կույտ: (Քաղաքներից) դուրս բերեցի նրանց անհաշիվ ռազմավարը, հարստությունը (և) ունեցվածքը: Նրանց մնացած 6.000 ռազ-*

*միկներին, որոնք փախել էին իմ զենքերից (և այնուհետ) հնազանդ-վել ինձ, ես ընդունեցի (և) իմ երկրի մարդիկ համարեցի:*

* * *

*(Col. i, 89 – ii 35) Այդ ժամանակ արշավեցի դեպի անհնազանդ Կադմուխի երկիրը, որը մերժել էր (վճարել) Աշշուրի՝ իմ տիրոջ հարկն ու (կատարել) պարհակները: Ես նվաճեցի Կադմուխի ընդարձակ երկիրը: Դուրս բերեցի նրանց անհաշիվ ռազմավարը, հարստությունը (և) ունեցվածքը: Նրանց քաղաքները հրդեհեցի, ավերեցի (և) հիմնահատակ կործանեցի: Կադմուխի երկրի մնացյալ (բնակիչները), որոնք փախել էին իմ զենքերից (և) անցել Շերեշե քաղաքը, որը Տիգրիսի[5] այն ափին է, այդ քաղաքն իրենց ամրոցը դարձրին: Վերցնելով իմ մարտակառքերն ու զինվորներին, ուղղաձիգ լեռների շղթան և դժվարին անցումները պղնձե բրիչներով ես հար-թեցի (և) պատրաստեցի հարմար ճանապարհ՝ իմ մարտակառքերի և զորքերի անցման համար: Ես անցա Տիգրիս (գետը և) նվաճեցի նրանց ամրացված քաղաքը՝ Շերեշեն: Ճակատամարտում նրանց ռազմիկների (մարմինները) ինչպես հացահատիկի դեզ ես սփռեցի: Նրանց արյունը լեռների հովիտներում և դաշտերում ես հոսեցրի: Այդ ժամանակ ես գետնեցի ինչպես ոչխար Կադմուխու երկրի բանակի հետ (նաև) Բաբխի (երկրի) բանակը, որը եկել էր օգնելու և աջակցելու Կադմուխի երկրին: Նրանց ռազմիկների մարմիններից ես բլուրներ բարձրացրի լեռների եզրին: Թողեցի, որ Նամե գետը տանի նրանց ռազմիկների մարմինները դեպի Տիգրիս: Նրանց թագավոր Կիլի-Թեշուբին՝ Կալի-Թեշուբի որդուն, որին անվանում են (նաև) Էրրուբի, ճակատամարտում ես բռնեցի: Գերեցի նրա կանանց, նրա հարազատ որդիներին, նրա տոհմը, (ինչպես նաև) 180 պղնձե անոթ, հինգ բրոնզե տաշտ, իրենց աստվածների, ոսկու և արծաթի, իրենց ընտիր ունեցվածքի հետ (ես տարա): Նրանց ռազմավարը դուրս բերեցի: Ես հրդեհեցի, ավերեցի (և) հիմնահատակ կործանեցի այդ քաղաքն ու նրա պալատը:*

* * *

*(Col. ii 35 – 57) Ինչ վերաբերում է Ուրրատինաշ քաղաքին՝ նրանց ամրոցին, որը գտնվում է Պանարու երկրում[6], սարսափը, երկյուղն (ու) Աշշուրի՝ իմ տիրոջ փայլը տապալեց նրանց: Իրենց կյանքը*

*փրկելու համար նրանք վերցրին իրենց աստվածներին (և) ունեցվածքը (և) ինչպես թռչուն թռան դեպի բարձր լեռների ծերպերը: Վերցնելով իմ մարտակառքն ու բանակը ես անցա Տիգրիս գետը: Շադի-Թեշուբը՝ Խաթթուխիի որդին, Ուրրատինաշ քաղաքի արքան, հնազանդվեց ինձ իր իսկ երկրում: Որպես պատանդ ես վերցրի նրա հարազատ որդիներին և նրա ընտանիքը: Որպես հարկ նա ինձ բերեց 60 պղնձե կաթսա, բրոնզե չաներ և բրոնզե մեծ տաշտեր՝ 120 մարդկանց, խոշոր ու մանր եղջերավոր անասունների հետ (միասին): Ես ընդունեցի (նրա) հարկը, գթացի նրան (և) պահպանեցի նրա կյանքը: Իմ տիրապետությունը ընդմիշտ նրա վրա հաստատեցի: Ես ամբողջությամբ նվաճեցի ընդարձակ Կադմուխի երկիրը և հնազանդեցրի այն:*

* * *

*(Col. ii 58 – 62) Այդ նույն ժամանակ Կադմուխի երկրի ավարից ու հարկից Աշշուր աստծուն ես ընծայեցի մեկ բրոնզե չան և մեկ բրոնզե կաթսա: Ադադ[7] աստծուն, որը սիրում է ինձ, ես տվեցի 60 պղնձե անոթներ նրանց[8] աստվածների հետ (միասին):*

* * *

(Col. ii 63 – 88: Տրվում է Իշդիշ[9] երկիր իրագործված արշավանքի նկարագրությունը)

* * *

*(Col. ii 89 – iii 6) Ես նվաճեցի ապստամբ և անհնազանդ Սուբարի երկիրը: Ես իմ տիրապետության ծանր լուծը հաստատեցի Ալզի և Պուրուլումզի երկրների վրա, որոնք հեռացել էին հարկ ու տուրք տալուց, այնպես, որ նրանք ամեն տարի ուղարկեն իրենց հարկն ու տուրքը ինձ մոտ՝ իմ Աշշուր քաղաքը:*

*Հենց որ իմ քաջությամբ, որի միջոցով Աշշուր աստվածը՝ իմ տերը, իմ ձեռքն էր դրել (այն) հզոր զենքը, որը հնազանդեցնում է անհնազանդներին, նա հրամայեց ինձ ընդարձակել իր երկրի սահմանները, 4000 կասկեր և ուրումեացիներ[10]՝ Խաթթի երկրի անհնազանդ զորքը, որոնք ուժով տիրել էին Շուբարտու երկրի քաղաքներին, որոնք Աշշուր աստծու՝ իմ տիրոջ, հպատակներն էին,*

*(նրանք) լսեցին Շուբարտու իմ գալստյան մասին: Իմ քաջության փայլը գետնեց նրանց և, վախենալով ճակատամարտից, նրանք հնազանդվեցին ինձ: Ես գերեցի նրանց՝ իրենց ունեցվածքի, 120 մարտակառքերի և լծկան ձիերի հետ միասին, և նրանց իմ երկրի մարդիկ համարեցի:*

* * *

(Col. iii 7 – iv 42: Տրվում է տարբեր երկրներ, այդ թվում նաև Կադմուխի իրագործված երկրորդ արշավանքի նկարագրությունը):

* * *

*(Col. iv 43 – v 21) Այդ ժամանակ Աշշուր աստծո՝ իմ տիրոջ, փառաբանված զորությամբ, Շամաշ աստծո՝ ռազմիկի, հաստատակամ հավանությամբ[11], մեծ աստվածների աջակցությամբ, որոնց հետ ինչպես հարկ է կառավարարում էի ես (աշխարհի) չորս կողմերում, և չունեմ հակառակորդ ճակատամարտում, ոչ էլ հավասարը՝ պատերազմում, Աշշուր աստծո՝ իմ տիրոջ հրամանով, արշավեցի ես Նաիրի երկրների դեմ, որոնց հեռավոր արքաները, արևմուտքի Վերին ծովի[12] ափերին, չէին տեսել հպատակություն: Ես առաջ շարժվեցի խորդուբորդ ճանապարհներով և վտանգավոր անցումներով, որոնց էության (մասին)[13] ոչ մի արքա նախկինում չգիտեր. (դրանք) փակված արահետներ (էին և) անհայտ[14] հեռավոր շրջաններ: Էլամա, Ամադանու, Էլխիշ, Շերաբելի, Թարխունա, Թերքախուլի, Քիծրա, Թարխանաբե, Էլուլա, Խաշթարայե, Շախիշարա, Ուբերա, Միլիադրունի, Շուլիանզի, Նուբանաշե (և) Շեշե լեռները՝ 16 հզոր լեռներ, (որոնց) անհարթ տարածքը ես հարթեցի պղնձե բրիչներով (և) քշեցի իմ մարտակառքը հարթ տարածքով[15]: Ես հատեցի ուրումու-ծառերը, որոնք աճում են լեռներում, (դրանցով) լավ կամուրջներ կառուցեցի իմ մարտակառքերի ու բանակի անցման համար (և) անցա Եփրատ գետը: Թումմե (երկրի) արքան, Թունուբե (երկրի) արքան, Թուալի (երկրի) արքան, Դարդարի[16] (երկրի) արքան, Ուզուլա (երկրի) արքան, Ունզամունի (երկրի) արքան, Անդիաբի (երկրի) արքան, Պիլադարնի[17] (երկրի) արքան, Ադուրգինի (երկրի) արքան, Քուլիբարզինի (երկրի) արքան, Շինիբիրնի (երկրի) արքան, Խիմուա (երկրի) արքան, Պայթերի (երկրի) արքան, Ուիրամ (երկրի) արքան, Շուրուրիա (երկրի) արքան, Աբաենի (երկրի) արքան, Ադաենի (երկրի) արքան, Քիրինի*

*(երկրի) արքան, Ալբայա (երկրի) արքան, Ուգինա (երկրի) արքան, Նազաբիա (երկրի) արքան, Աբարսիունի (երկրի) արքան, Դայենի[18] (երկրի) արքան, միասին՝ Նաիրի երկրների 23 արքաներ իրենց երկրներում իրենց մարտակառքերն ու բանակը միավորեցին (և) շարժվեցին ընդառաջ՝ պատերազմ մղելու, պայքարելու և մարտնչելու:*

*Իմ դաժան զենքերի կատաղի ուժով ես մոտեցա նրանց (և) ինչպես Ադադ աստծո փոթորիկ՝ կործանեցի նրանց ընդարձակ բանակը: Նրանց ռազմիկների մարմիններն իրենց երկրում, լեռների հովիտներում և քաղաքների շրջակայքում ես դիզեցի ինչպես հացահատիկի կույտ: Նրանց 120 մարտակառքերը՝ իրենց հանդերձանքով, ես մարտում գրավեցի (և) Նաիրի երկրի 60 արքաների՝ ներառյալ նրանց, ովքեր եկան օգնելու նրանց[19], ես տեգերով հետապնդեցի մինչև Վերին ծովը[20]: Ես նվաճեցի նրանց մեծ քաղաքները (և) դուրս բերեցի նրանց ռազմավարը, հարստությունը (և) ունեցվածքը: Ես հրդեհեցի, ավերեցի (և) հիմնահատակ կործանեցի նրանց քաղաքները, վերածեցի դրանք ավերակ բլուրների: Ձիերի երամակները, ջորիներն ու ավանակները՝ կենդանի ապրանքը նրանց արոտավայրերի, ես ետ բերեցի անհաշիվ քանակությամբ: Նաիրի երկրի բոլոր արքաներին ես կենդանի (գերի) բռնեցի: Ես գթացի այդ արքաներին և խնայեցի նրանց կյանքը: Շամաշի՝ իմ տիրոջ ներկայությամբ ազատ արձակեցի ես նրանց կապանքներն ու շղթաները, ստիպեցի նրանց երդվել իմ մեծ աստվածներով (և ընդունել) երդում՝ հավերժ հպատակություն: Նրանց հարազատ, արքայազուն որդիներին պատանդ վերցրեցի: 1.200 ձի և 2.000 (խոշոր եղջերավոր) անասուն նրանց վրա հարկ հաստատեցի: (Այնուհետ) թույլ տվեցի, որ նրանք վերադառնան իրենց երկրները:*

* * *

*(Col. v 22 – v 32) Սենիին՝ Դայենի երկրի արքային, որը հպատակ չէր եղել Աշշուր աստծուն՝ իմ տիրոջը, կապանքների և շղթաների մեջ իմ Աշշուր քաղաքը բերեցի: Ես գթացի նրան և թույլ տվեցի իմ Աշշուր քաղաքից կենդանի հեռանալ՝ որպեսզի փառաբանի հաղթանակը մեծ աստվածների: (Այսպիսով), ընդարձակ Նաիրի երկրներին ամբողջությամբ ես տիրեցի: Նրանց բոլոր արքաներին ես իրապես խոնարհեցրի:*

* * *

***(Col. v 33 – viii 90: Տրվում է տարբեր երկրներ իրագործված արշավանքների, արքայի կատարած շինարարական աշխատանքների և այլ գործերի նկարագրությունը: Տեքստը եզրափակվում է անեծքի բանաձևով: Թվագրվում է «գլխավոր մատովակ»[21] Ինա-իլլիա-ալակի էպոնիմատի տարով):***

*1. Երկրային, ընդգետնյա և մասամբ երկնային աստվածությունների խումբ, Անու(մ) աստծո զավակները, որոնց թիվը, տարբեր ժամանակաշրջանների դիցերգերում, տատանվել է 7-ից 600-ի սահմաններում:*

*2. Սինը Լուսնի աստվածն էր, երկրորդ սերնդի աստվածություն: Շումերական դիցաբանության Նաննա աստծու աքադական կրկնակը:*

*3. Շամաշը (շումերական դիցարանում՝ Ութու) Արևի աստվածն էր, Սին (Նաննա) աստծո որդին:*

*4. Մուշքերը (մասնագիտական գրականության մեջ՝ «արևելյան մուշքեր») հավանաբար հանդիսացել են Հայկական լեռնաշխարհի բնակիչներ (տե՛ս **Ա. Վ. Քոսյան,** Մերձավորարևելյան ճգնաժամը և Հայկական լեռնաշխարհը, Երևան, 1999, էջ 165-166), որոնք, աստիճանաբար տեղաշարժվելով հարավ, հաստատվել են Արևելյան (Հայկական) Տավրոսի շրջաններում՝ Ալզի, Պուրուլումզի և Կադմուխի երկրների մերձավորությամբ: Ասորեստանյան հետագա աղբյուրները Բիթլիսի լեռների շրջանում մշտապես հիշում են Մուս(շ)կու/ի անվամբ երկիր (**M. Liverani**, Studies on the Annals of Ashurnasirpal II. 2: Topographical Analysis, Quaderni di Geografica Storica, 4, Roma, 1992, էջ 30-31): Զշփոթել նորասորեստանյան աղբյուրների Մուշքի երկրի հետ (Փռյուգիա):*

*5. Հնում Տիգրիսի անունը հնչել է «(Ի)Դիգլաթ»:*

*6. Հնարավոր է՝ «Պանարու լեռան վրա»:*

*7. **Ադադ** (շում. Իշկուր) - փոթորկի և ամպրոպի աստվածը շումերա-աքադական դիցարանում:*

*8. Նկատի է առնվում Կադմուխիի աստվածներին:*

*9. Ընթերցվել է նաև Միլդիշ: Հնարավոր տեղորոշման համար տե՛ս **И. М. Дьяконов,** Ассиро-вавилонские источники по истории Урарту, "Вестник древней истории", М., 1951, № 2-4, № 10, прим. 22.*

*10. **Ուրումու,** «ուրումեացիներ» - էթնիկական տարածք և ներգաղթած հանրույթ Տիգրիսի վերին հոսանքի շրջանում, Ալզի, Պուրուլումզի երկրների հարևանությամբ: Տե՛ս **Н. В. Арутюнян,** Топонимика Урарту, с. 212:*

11. Շամաշ աստծուն ուղղված գուշակային բնույթի տեքստերի համար տե՛ս ստորև՝ սույն բաժնի թիվ 20-րդ տեքստը:

12. Արևմուտքի Վերին ծով: Ամենայն հավանականությամբ նկատի է առնվում Վանա լիճը: Սակայն տե՛ս և հմմտ. **И. М. Дьяконов**, Ассиро-вавилонские источники по истории Урарту, "Вестник древней истории", М., 1951, № 2-4, № 10, прим. 45.

13. Բառացի՝ «որոնց ներսը»:

14. Բառացի՝ «չբացված»:

15. Բնագրում այս միտքը տրված է հակառակ դասավորությամբ:

16. Այլ ընթերցմամբ՝ Կինդարի:

17. Այլ ընթերցմամբ՝ Պիլակինի:

18. KUR.Da-ie-e-ni. Թերևս նույնն է, ինչ ուրարտական աղբյուրների Դիաուխին: Ավանդաբար տեղադրվում է Հայկական լեռնաշխարհի հյուսիսում՝ համադրվելով Տայքի հետ (**Н. В. Арутюнян**, Топонимика Урарту, с. 70-71; **Հ. Կարապետյան**, Սեպագիր տեղանուններ (Այրարատում և հարակից նահանգներում), Ե., 1998, էջ 21-24): Սակայն, տեղադրության առումով առկա են այլ հնարավորություններ ևս:

19. Նկատի ունի վերոհիշյալ 23 արքաներին:

20. Թերև նույնն է, ինչ վերը հիշված «արևմուտքի Վերին ծովը», այն է, հավանաբար, Վանա լիճը: Տարբեր հեղինակներ այստեղ սովորաբար տեսնում են Սև ծովը:

21. Ասորեստանյան բարձրաստիճան պաշտոնյա, նաև զինվորական առաջնորդ:

4.

## ԹԻԳԼԱԹՊԱԼԱՍԱՐ I-Ի ԹՈՂԱԾ ՄԱՆԱԶԿԵՐՏԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**Վիմագիր արձանագրություն: Գտնվում է Յոնջալուում, Մանազկերտի մոտ (Արևմտյան Հայաստան): Տեքստը կազմվել է ասորեստանյան Թիգլաթպալասար (Թուկուլթի-ապալ-էշարրա) I արքայի գահակալության շրջանում (1114-1076):**

**Առաջին անգամ հրատարակվել է Վալդեմար Բելքի և Կարլ Ֆրիդրիխ Լեման-Հաուպտի կողմից: Թարգմանությունը բերվում է ըստ A. K. Grayson,** Assyrian Rulers of the Early First Millennium BC (1114-859 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. II, Toronto-Buffalo-London, ***1991, A.0.87.16 հրատարակության: Տրվում է ամբողջությամբ:***

*(1-7) Թուկուլթի-ապալ-էշարրա(ն) արքա (է) հզոր, արքա տիեզերքի, արքա Աշշուր (երկրի), արքա (աշխարհի) չորսը կողմերի, նվաճողը Նաիրի (երկրի)՝ Թումմի (երկրից) մինչև Դայենի (երկիր), նվաճողը Խաբխի[1] (երկրի)՝ մինչև Մեծ ծովը[2]:*

*1. **Խաբխի** - լեռնային երկիր Հայկական լեռնաշխարհի հարավում, Կորդվաց լեռների շրջանում, ասորեստանյան միջնաշխարհից հյուսիս: Սկզբնապես ունեցել է տարածական մեծ ընդգրկում::*

*2. Հավանաբար, նկատի է առնվում Վանա լիճը: Կարծիք կա նաև, որ այդ անվան տակ նկատի է առնվել Սև ծովը, ինչը քիչ հավանական է:*

## *5.*

## *ԱՇՇՈՒՐՆԱԾԻՐԱՊԱԼԻ ՏԵՐՈՒԹՅԱՆ «ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ»*

***Հանդիսավոր արձանագրություն: Հայտնաբերվել է Կալխուից (Կալախ, ներկայիս Թելլ-Նիմրուդ հնավայրը Իրաքում), պահվում է Մոսուլի թանգարանում: Տեքստը կազմվել է ասորեստանյան Աշշուր-նածիր-ապալ II արքայի գահակալության շրջանում (884-859):***

***Առաջին անգամ հրատարակվել է Դոնալդ Վայսմանի կողմից: Թարգմանությունը տրվում է ըստ* A. K. Grayson,** Assyrian Rulers of the Early First Millennium BC (1114-859 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. II, Toronto-Buffalo-London, ***1991, A.0.101.30 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

*(1-4) (Սեփականությունը) Աշշուր-նածիր-ապալ (արքայի) պալատի՝ Աշշուրի տեղապահի, ընտրված Էնլիլի և Նինուրտայի կողմից, Անուի և Դագանի սիրեցյալը, կործանիչ զենքը մեծն աստվածների, հզոր արքան, տիեզերքի արքան, որդին Թուկուլթի-Նինուրտայի[1]՝ մեծն արքայի, հզոր արքայի, տիեզերքի արքայի, Աշշուր (երկրի) արքայի, (որը) որդին (է) Ադադ-նիրարիի[2]՝ մեծ արքայի, հզոր արքայի, տիեզերքի արքայի (և) Աշշուր (երկրի) արքայի, քաջասիրտ մարդու, որը գործում է Աշշուրի՝ իր տիրոջ աջակցությամբ, որը հավասարը չունի (աշխարհի) չորս կողմերի իշխանների շարքում ......[3]:*

* * *

*(10բ–20ա) ..., արքան, որը հպատակեցրեց Տիգրիսի այն ափից մինչև Լաբնանա լեռներ[4] և Մեծ ծով[5] ձգվող տարածքը, ընդարձակ Լակե[6] երկիրը, և Սուխու երկիրը (ներառյալ) Ռապիկու[7] քաղաքը, նա նվաճեց Սուբնատ[8] գետի ակունքից մինչև Ուրարտու[9] երկիր (ընկած տարածքը), ես իմ երկրի սահմանների մեջ ներառեցի Կիրրուրի[10] երկրի լեռնանցք(ներ)ից մինչև Գիլզանու երկիր ձգվող տարածքը[11], Ստորին Զաբի այն ափից մինչև Թիլ Բարի քաղաքը, որը գտնվում է Զաբան երկրից վերև[12], Թիլ-շա-Աբթանի քաղաքից մինչև Թիլ-շա-Զաբդանի, Խիրիմու, Խարուտու քաղաքները, (որոնք) Կարդունիաշ[13] երկրի ամրոցներն են, Բաբիտու քաղաքի լեռնանցքից մինչև Խաշխմուր[14] լեռն ընկած մարդկանց որպես իմ երկրի մարդիկ հաշվեցի:*

1. Ասորեստանյան արքա Թուկուլթի-Նինուրտա II (890–884):

2. Ասորեստանյան արքա Ադադ-նիրարի II (912–891):

3. 5–10ա տողերում շարունակվում է արքայի փառաբանությունը:

4. Ներկայիս Լիբանանը:

5. «Մեծ ծով» ասելով այստեղ նկատի է առնվում Միջերկրական ծովը:

6. Երկիր (ցեղատարածք) Եփրատ և Խաբուր գետերի միախառնման շրջանում:

7. Երկիր Եփրատի միջին հոսանքի շրջանում, Ռապիկու՝ Լակե (Լակու) կամ Սուխու երկրի քաղաքներից, սահմանամերձ էր Բաբելոնիային: Տե՛ս **И. М. Дьяконов,** Ассиро-вавилонские источники по истории Урарту, "Вестник древней истории", М., 1951, № 2-4, № 24, прим. 3: **M. Liverani,** *Studies on the Annals of Ashurnasirpal II. 2: Topographical Analysis, Quaderni di Geografica Storica, 4, Roma, 1992,* քարտեզ 12.

8. Սուբնատ գետը նույնացվում է Սուփան-դերեյի հետ, Տիգրիսի վտակներից: **M. Liverani,** *Studies on the Annals of Ashurnasirpal II. 2: Topographical Analysis, Quaderni di Geografica Storica, 4, Roma, 1992,* էջ 34: Տե՛ս նաև **Н. В. Арутюнян,** Топономика Урарту, с. 170-171:

9. Միևնույն բովանդակությամբ կրկնօրինակ տեքստերում «Ուրարտու» անվան փոխարեն երբեմն նշվում է «Նիրբու» անունը (աքադ. «լեռնանցք(ներ): Տե՛ս **И. М. Дьяконов**, Ассиро-вавилонские источники по истории Урарту, "Вестник древней истории", М., 1951, № 2-4, № 24, прим. 4; **A. K. Grayson,** *Assyrian Rulers of the Early First Millennium BC (1114-859 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. II, Toronto-Buffalo-London, 1991,* էջ 268: Հմմտ. սակայն, **M. Liverani,** *Studies on the Annals of Ashurnasirpal II. 2: Topographical*

*Analysis, Quaderni di Geografica Storica, 4, Roma, 1992, էջ 119-ից: Ըստ որոշ հետազոտողների, «Ուրարտու» երկրանվան առկայությունը տեքստերում կարող էր լինել ուշ նորամուծության արդյունք: Տե՛ս* ***A. K. Grayson***, *Assyrian Rulers of the Early First Millennium BC (1114-859 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. II, Toronto-Buffalo-London, 1991, A.O.101.1 iii 122 տողին տրված մեկնությունը:*

*10. Այլ ընթերցմամբ՝ «Խաբրուրի»:*

*11.* ***Գիլզանու*** *– երկիր Ուրմիա լճի մերձավորությամբ, նրա հարավ-արևմտյան կամ հարավային ափերին:*

*12.* ***Զաբան*** *– անունը թերևս կապվում է Մեծ և Փոքր Զաբ գետերի անվան հետ, որոնց մերձավորությամբ էլ և գտնվել է:*

*13.* ***Կարդունիաշ*** *– կասիտական (քասեցիական) ժամանակաշրջանի Բաբելոնիայի անվանումներից մեկը:*

*14. Բաբիտու և Խաշիմուր (Խաշմար) լեռնանցքները գտնվում են Զագրոսյան լեռներում՝ Զամուա երկրում: Նշված արտահայտությամբ տրվում են Զամուա երկրի աշխարհագրական սահմանները:*

## *6.*

## *ՍԱԼՄԱՆԱՍԱՐ III-Ի ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀ. «ԱՐԱՄՈՒ ՈՒՐԱՐՏԱՑԻ»*

***Տարեգրություն: Հայտնաբերվել է Կարխից (Քուրխ, Կուրխ, քաղաք Տիգրի վերին հոսանքի շրջանում, ասորեստանյան Թուշխան նահանգում, ներկայիս Դիարբեքիրից հարավ-արևելք), պահվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում: Տեքստը կազմվել է ասորեստանյան Սալմանասար (Շուլմանու-աշարեդ) III արքայի գահակալության շրջանում (858-824):***

***Առաջինը անգամ ամբողջությամբ հրատարակվել է Ջեյմս Գրեյգի կողմից (J. A. Graig,*** The Monolith Inscription of Salmaneser II, Hebraica ***3, 1886-1887, էջ 204-230): Թարգմանությունը տրվում է ըստ A. K. Grayson,*** Assyrian Rulers of the Early First Millennium BC (858-745 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. III, Toronto-Buffalo-London, ***1996, A.0.102.2 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

*(Col. ii 30բ, ii 40բ – ii 44)* ***Աշշուր-բել-կա՛ինի էպոնիմատի***

*տարում[1] ............[2], չարժվելով Կար-Շուլմանու-աշարեդ[3] քաղաքից, ես անցա [Խա]սումու լեռը (և) և իջա դեպի Բիթ-Զամանի[4]: Շարժվելով Բիթ-Զամանի երկրից ես անցա Նադմանու լեռները (և) Մերխիշուն: Պղնձե բրիչներով ես հարթեցրի խորդուբորդ արահետները դժվարամատչ լեռներում, որոնք ուղղահայաց բարձրանում են դեպի երկինքը, ինչպես դաշույնի շեղբ: Ես տարա (իմ) մարտակառքերն (ու) զորքերը այդ արահետներով (և) ցած իջա Իշուա[5] երկրի Էնզիտե[6] (երկիրը): Ողջ Էնզիտե (երկիրը) ես նվաճեցի, ավերեցի, հիմնահատակ կործանեցի (և) հրդեհեցի նրանց քաղաքները, նրանց անհամար ռազմավարը, հարստությունն (ու) ունեցվածքը տարա: Ես պատրաստեցի իմ (անձի) վիթխարի, արքայական կոթողը (և) գրեցի նրա վրա փառաբանությունը Աշշուր աստծո՝ մեծ տիրոջ, (և) իմ հաղթական նվաճումները: Ես կանգնեցրի այն Սալուրիա քաղաքում:*

* * *

*(Col. ii 45 – ii 47ա) Շարժվելով Էնզիտե երկրից ես անցա Արծանիա[7] գետը (և) մոտեցա Սուխմե[8] երկրին: Նվաճեցի Ուաշթալ ամրացված քաղաքը, ավերեցի, հիմնահատակ կործանեցի (և) հրդեհեցի ողջ Սուխմե երկիրը: Ես գերեցի նրանց քաղաքի տիրոջը՝ Սուային: Շարժվելով Սուխմե երկրից ես ցած իջա (դեպի) Դայենի երկիրը: Ես նվաճեցի ողջ Դայենի երկիրը[9], ավերեցի, հիմնակահատակ կործանեցի (և) հրդեհեցի նրանց քաղաքները: Ես ձեռք բերեցի (նրանցից) գերիներ, գույք (և) հարուստ ունեցվածք:*

* * *

*(Col. ii 47բ – ii 56ա) Շարժվելով Դայենու երկրից, ես մոտեցա Արծաշքուին[10]՝ Արամու[11] ուրարտացու արքայական քաղաքին: Արամու ուրարտացին իմ հզոր զենքերի փայլից և բուռն գրոհից սարսափեց, լքեց իր քաղաքը (և) բարձրացավ Ադդուրու լեռը[12]: Ես նրա ետևից լեռը բարձրացա (և) հզոր ճակատամարտ տվեցի լեռներում: Ես սրով խոցեցի նրա 3.400 ռազմիկների, ավեր[13] սփռեցի նրանց վրա, ինչպես Ադադ աստվածը (կաներ), (և) նրանց արյամբ լեռը, ինչպես կարմիր բուրդը, ներկեցի կարմիրով: Ես խլեցի նրա ճամբարը (և) լեռներից ցած բերեցի նրա մարտակառքերը, հեծյալներին, ձիերին, ջորիներին, բեռնակիր անասունները, գերիներ (և) հարուստ ավար: Արամուն, իր կյանքը փրկելու համար, բարձրացավ բարձրաբերձ լեռը: Իմ զորեղ*

*առնականությամբ ես տրորեցի նրա երկիրը ինչպես վայրի ցուլ (և) ավեր սփռեցի նրա քաղաքներում: Ես ավերեցի, հիմնահատակ կործանեցի (և) հրդեհեցի Արծաշքու քաղաքը՝ իր շրջակայքի քաղաքների հետ: Ես (հատված) գլուխներից նրա դարպասի առջև աշտարակներ կանգնեցրի, ազնվազարմերի (գլուխները) ես խառնեցի կույտերի մեջ, մյուսներին(ը) ցից հանեցի (հատված գլուխների) կույտերի շուրջ: Շարժվելով Արծաշքու քաղաքից, [ես բարձրացա Էրիտիա] լեռը: Ես պատրաստեցի իմ (անձի) վիթխարի, արքայական կոթողը (և) [գրեցի] նրա վրա փառաբանությունը Աշշուր աստծու՝ մեծ տիրոջ, (և) իմ հաղթական նվաճումները, որոնց ես հասա Ուրարտու երկրում: Ես կանգնեցրի (այն) [Էրի]տիա (լեռան) վրա:*

* * *

*(Col.ii 56բ – ii 60ա) Շարժվելով Էրիտիայից՝ ես մոտեցա Արամալու [քաղաքին], ավերեցի, հիմնահատակ կործանեցի (և) հրդեհեցի նրա (շրջակայքի) քաղաքները: Շարժվելով Արամալու քաղաքից, ես [մոտեցա] Զանզիունա քաղաքին: [...]ութեն՝ [Զա]նզիունա քաղաքի արքան, վախենալով ինձ հետ ճակատամարտելուց, հնազանդվեց ինձ: Ես նրանից ստացա ձիերի լծվածքներ, խոշոր (և) մանր եղջերավոր անասուններ: Ես գթացի [նրան (և ազատ արձակեցի): Իմ վերադարձին] ես ցած իջա դեպի Նաիրի երկրի ծով[14], լվացի ծովի (ջրերում) հզոր զենքերն Աշշուր աստծու (և) զոհեր մատուցեցի: Ես պատրաստեցի [իմ (անձի) վիթխարի, արքայական կոթողը] (և) գրեցի նրա վրա փառաբանությունը Աշշուր աստծու՝ մեծ տիրոջ, (ինչպես նաև) իմ հերոսական գործերն ու հաղթական ձեռնարկումները [(և) կանգնեցրի այն ծովի ափին]:*

* * *

*(Col. ii 60բ – ii 63ա) Շարժվելով [ծովից] ես մոտեցա Գիլզանու երկրին: Ասաուն՝ Գիլզանու երկրի արքան, իր եղբայրների (և) որդիների հետ միասին դուրս եկավ ինձ ընդառաջ [(և) փարվեց իմ ոտքերին]: Ես ստացա նրանից (բազմաթիվ) [մարտակառքեր], ձիերի լծվածքներ, խոշոր (և) մանր եղջերավոր անասուններ, գինի (և) յոթը երկսապատ ուղտեր[15]: Ես պատրաստեցի իմ (անձի) վիթխարի, արքայական կոթողը (և) գրեցի նրա վրա Աշշուր աստծու՝ մեծ տիրոջ, (իմ) տիրոջ փառաբանությունը, և հաղթական նվաճումները, որին ես*

Հասա Նաիրի երկրում: Ես կանգնեցրի (այն) իր քաղաքի ներսում՝ իր տաճարում:

* * *

*(Col. ii 63բ – ii 66ա) Շարժվելով Գիլզանու երկրից ես մոտեցա Կակիի՝ Խուբուշքիա երկրի արքայի Շիլայա ամրացված քաղաքին: Ես պաշարեցի քաղաքը, նվաճեցի (այն, և) սպանեցի նրանցից շատերին: Ես նրանցից վերցրի 3.000 գերիներ, անհաշիվ (քանակությամբ) խոշոր, մանր եղջերավոր անասուններ, ձիեր, ջորիներ (ու) ավանակներ (և բերեցի) դրանց իմ Աշշուր քաղաքը: Ես մտա Էնզիտե երկրի լեռնանցքները (և) դուրս եկա Կիրրուրի երկրի լեռնանցքների միջով՝ Արբա'իլի[16] դիմաց:*

* * *

***Col. ii 66բ – ii 102: Տրվում է նույն տարում արքայի իրագործած այլ արշավանքների, ապա և հաջորդող մի քանի տարիների ամփոփ նկարագրությունը):***

1. Աշշուր-բել-կա'ինի էպոնիմատը թվագրվում է Ք. ա. 856 թ.:

2. Արձանագրության դիմային կողմում (Col. i) և հակառակ կողմի (Col. ii) սկզբնամասում (ii 30բ – ii 40ա) տրվում է Սալմանասար III-ի գահակալության առաջին տարիներն ամփոփող՝ ընդհուպ մինչև Հայկական լեռնաշխարհ իրագործված արշավանքին նախորդող անցքերի նկարագրությունը:

3. Տե՛ս սույն բաժնի թիվ 8 տեքստին տրված ներածությունը:

4. **Բիթ-Զամանի** – երկիր Տիգրիսի վերին հոսանքում, ներկայիս Դիարբեքիրի շրջանում (**Н. В. Арутюнян,** Топонимика Урарту, с. 58-59): Մանրամասն տե՛ս **E. Lipinski,** The Arameans: Their Ancient History, Culture, Religion, Leuven - Paris - Sterling, 2000, էջ 135-ից:

5. Նույնն է, ինչ հին ասորեստանյան աղբյուրների Զ/Շուբ/պանան, խեթական աղբյուրներում հիշվում է Իսուվա, ուրարտական աղբյուրներում՝ Ծու - փանի անվամբ: Նույնական է անտիկ աղբյուրների Սոփենեին՝ հին հայկական Ծոփքը:

6. Նույնն է, ինչ հայկական աղբյուրների Անձիտ գավառը:

7. Նույնն է ինչ Արածանին՝ Եփրատի վտակը, այժմ՝ Մուրադ-սու:

8. Երկիր Արածանիի ստորին հոսանքի շրջանում: Որոշ հետազոտողներ այս - տեղից են բխեցնում վրացիների կողմից հայ ժողովրդին տրված «սոմեխի»

*անվանումը: Տե՛ս* **Г. А. Меликишвили,** *Наири-Урарту, էջ 407 (նշվ. գրականությամբ), 418-419: Հմմտ.* **Գ. Բ. Ջահուկյան,** *Հայոց լեզվի պատմություն. նախագրային ժամանակաշրջան, Երևան, 1987, էջ 288:*

*9. Բնագրում՝ «քաղաքը»:*

*10. Արշածքու(ն) քաղաքը մասնագիտական գրականության մեջ նույնացվել է Արճեշին (***Հ. Կարագյոզյան,** *1998, էջ 27 և այլուր), Արծկեին (***Н. В. Арутюнян,** *Топонимика Урарту, с. 34-35), առաջարկվել են այլ տեղորոշումներ ևս:*

*11. Բնագրում՝ «Արրամու»:*

*12. Թերևս նույնն է, ինչ ուրարտական աղբյուրների էիդուրուն՝ Սիփանը լեռը: Սակայն, չի բացառվում այլ համադրումների հնարավորությունը ևս:*

*13. Բառացի՝ «ջրհեղեղ»:*

*14. Ենթադրվում է, որ այստեղ «Նաիրի երկրի ծովը» Ուրմիա լիճն է:*

*15. Բառացի՝ «ուղտեր, որոնք ունեն երկու սապատ»:*

*16. Քաղաքական խոշոր կենտրոն հյուսիսային Միջագետքում, քննարկվող ժամանակաշրջանում գտնվել է Ասորեստանի կազմում, էրբիլ քաղաքը ներկայիս Իրաքում:*

## 7.

## ՍԱԼՄԱՆԱՍԱՐ III ԵՎ ՍԱՐԴՈՒՐԻ I

***Տարեգրություն: Հայտնաբերվել է Կալխուից (Կալախ, ներկայիս Թել-Նիմրուդ հնավայրը Իրաքում), պահվում է Բաղդադի Իրաքի Ազգային հնագիտական թանգարանում: Տեքստը կազմվել է ասորեստանյան Սալմանասար (Շուլմանու-աշարեդ) III արքայի գահակալության շրջանում (858-824):***

***Առաջին անգամ հրատարակվել է Յորգեն Լեսոյի կողմից*** (**J. Laessøe,** A Statue of Salmaneser III, from Nimrud, “Iraq”, vol. XXI, ***1959, էջ 147-157, աղ. XL-XLII): Թարգմանությունը տրվում է ըստ*** **A. K. Grayson,** Assyrian Rulers of the Early First Millennium BC (858-745 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. III, Toronto-Buffalo-London, ***1996, A.0.102.16 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

*(228?) Իմ կառավարման քսանյոթերորդ տարում ես ժողովեցի իմ մարտակառքերն (ու) զորքերը:*

*(230?) Ես հրաման տվեցի (և) ուղարկեցի Դայյան-Աշշուրին[1]՝*

զորավարին, իմ ընդարձակ բանակի հրամանատարին, առաջնորդելու իմ բանակը դեպի Ուրարտու: Նա ցած իջավ դեպի Բիթ-Զամանի (և) մտավ Ամմաշ քաղաքի լեռնանցքը: Նա գետնանցեց Արծանիան: Երբ ուրարտացի Սեդուրին[2] լսեց (այդ մասին), իր հզոր բանակի զորության հենվելով նա հարձակվեց՝ պատերազմ մղելու և ճակատամարտելու (համար):

(235? – 244?) Նա[3] կռվեց նրա հետ, պարտություն մատնեց նրան (և) ընդարձակ դաշտը լցրեց նրա բանակի զինվորների մարմիններով: Նա գերեց[4] նրա անհամար հեծյալներին (և) նրա պատերազմական գույքը: Իր կյանքը փրկելու (համար) նա բարձրացավ դժվարամատչ լեռը: Ունզումունի քաղաքը[5]..., [......] բնակատեղին, իր շրջակայքի քաղաքներով նա[6] հիմքից քանդեց, ավերեց (և) հրդեհեց: Նա թափեց նրանց վրա սարսափն իմ իշխանության փայլի: Իր արշավանքի (հետագա) ընթացքում նա նվաճեց Ալսիաննայի [Ուր]աշ[7] արքա-յական (քաղաքը):

1. Ասորեստանյան ռազմական և քաղաքական խոշոր գործիչ, երկրորդ դեմքը երկրում: Ասորեստանյան արքունիքում և անձամբ արքայի՝ Սալմանասար III-ի նկատմամբ ունեցած իր հսկայական ազդեցությամբ հարուցել է ինչպես արքունիքի, այնպես էլ արքայական ընտանիքի դժգոհությունը, ինչը հետա - գայում վերածվեց քաղաքացիական պատերազմի:

2. Մասնագիտական գրականության մեջ Սարդուրին դիտվում է որպես ուրարտական պետության գահցանկում այս անունը կրող առաջին արքա (Սարդուրի I), ըստ այդմ, նրան վերագրելով նաև որոշակի կառավարման թվականներ (835-825): Սակայն, չի բացառվում այլ մոտեցումների հնարա-վորությունը ևս:

3. Տեքստը նկատի ունի զորավար Դայյան Աշշուրին:

4. Բառացի՝ «նրանից վերցրեց»:

5. Ունզումունին (Ունզամունի) հայտնի էր դեռևս Թիգլաթպալասար I-ի ժամանակներից՝ նաիրյան միության 23 երկրների շարքում: Տե՛ս թիվ 3 տեքստը (Col. iv 74):

6. Այստեղ և այսուհետ տեքստը նկատի ունի զորավար Դայյան Աշշուրին:

7. Թերևս նույնն է, ինչ Ուրա քաղաքը Հայկական լեռնաշխարհի հարավում՝ Արևելյան (Հայկական) Տավրոսում: Այս վերջինիս տեղորոշմանը վերաբերող կարծիքները տե՛ս **Н. В. Арутюнян,** Топонимика Урарту, с. 209-210:

*8.*

*ՇԱՄՇԻ-ԻԼՈՒ ԵՎ ԱՐԳԻՇՏԻ I*

***Հանդիսավոր արձանագրություն-կոթող: Հայտնաբերվել է Թիլ-Բարսիպ քաղաքից (հետագայում՝ Կար-Շուլմանու-աշարեդ, ներկայիս Թելլ Ախմար հնավայրը Սիրիայում): Տեքստը կազմվել է ասորեստանյան Սալմանասար (Շուլմանու-աշարեդ) IV արքայի (՞) գահակալության շրջանում (782-773): Տեքստը բացառիկ է. միակն է, որ կազմվել է ասորեստանյան բարձրաստիճան պաշտոնյայի կողմից առանց արքայի անունը հիշատակելու: Տեքստի կազմող զորավար Շամշի-իլուն այս շրջանում Ասորեստանի փաստացի կառավարիչն էր, երկրի մի շարք նահանգներում նա իշխում էր որպես անկախ տիրակալ: Մանրամասն տե՛ս* A. K. Grayson,** Studies in Neo-Assyrian History II: The Eight Century BC, in E. Robbins, S. Sandahl (Eds.), Corolla Torontonensis. Studies in Honour of R. M. Smith, Toronto***, 1994, էջ 73-ից:***

***Առաջին անգամ հրատարակվել է Լեոնարդ Քինգի կողմից (*L. W. King,** Annals of Archaeology and Anthropology, 2, Liverpool, ***1909, էջ 185-186, աղ. XXXVII): Թարգմանությունը տրվում է ըստ* A. K. Grayson**, Assyrian Rulers of the Early First Millennium BC (858-745 BC), The Royal Inscriptions of Mesopotamia: Assyrian Periods, vol. III, Toronto-Buffalo-London***, 1996, A.0.104.2010 հրատարակության: Մեջբերվում է հատվածաբար:***

(1-8ա. Թվարկվում են աստվածներն ու նրանց հիմնական գործառույթները):

*(8բ-11ա) Շամշի-իլուն՝ զորավարը, մեծ սեննեկապետը, տաճարների կառավարիչը, հրամանատարն ընդարձակ բանակի, նա - հանգապետը Խաթթի երկրի (և) Գուտի[1] երկրի և ողջ Նամրի[2] երկրի, Արևմուտքի լեռների նվաճողը, որը ավերածություն սփռեց [......], որը ամայացրեց Մուսկու և Ուրարտու երկրները, որը թալանեց նրանց ժողովրդին, որը ամայացրեց Ութու, Ռուբու, Խադալու (և) Լաբդուդու երկրները[3], որը հաղթեց նրանց:*

*(11բ-13ա) Այդ նույն ժամանակ ուրարտացի Արգիշտին, որի ուժերը լայնածավալ են, ինչպես թանձր ամպ, որը կապեր չէր հաստատել[4] նախորդ արքաներից որևէ մեկի հետ, նա ընդվզեց և ժողովեց մեկտեղ Գուտի երկրի բոլոր մարդկանց: Նա կազմակերպեց*

*իր (ուժերը) ճակատամարտի (համար), (և այնուհետ) առաջացան նրա զորքերը դեպի լեռները՝ պատերազմելու:*

*(13բ–18) Հոր՝ Աշշուր (աստծո), մեծ տիրոջ, և Էշշարրա (տաճարի) մեծահոգի մոր հրամանով, առաջնայինը աստվածների մեջ՝ Նինլիլ[5] աստվածուհին, Շամշի-իլուն, զորավարը, մեծ սենեկապետը, տաճարների կառավարիչը, հրամանատարն ընդարձակ բանակի, շարժեց զինվորների հզոր ուժերը դեպի այդ լեռները: (Թմբուկների) հզոր զարկով (և) (կռվի) պատրաստ զենքերով, որոնք թնդում են ահասարսուռ, նա[6] նետվեց առաջ՝ ինչպես սարսափելի հողմ: Նա թողեց, (որ) դեպի նա[7] թռչեն փոթորկոտ նժույգները՝ լծված իր մարտակառքին, ինչպես Անզու-թռչունը[8], և պարտության մատնեց նրան: Նա լքեց իր զորքերն (ու) հողմացրիվ (եղած) մարդկանց (և) սարսափեց ճակատամարտից (և) նա փախավ՝ ինչպես գողը: Նա[9] վերցրեց նրանից նրա ճամբարը, նրա արքունի գանձարանը (և) նրա [......]:*

(19–24: Բնագիրը եզրափակվում է տեղեկատվությամբ՝ Կար-Շուլմանու-աշարեդ քաղաքում Շամշի-իլուի կողմից կանգնեցված, անվանապես հիշվող երկու առյուծ-կոթողների մասին, որոնց վրա փորագրվել է արձանագրությունը):

*1. Գուտի/Կուտին Կորդվաց աշխարհի անվանումն է, որը Հայաստանի ընդհանրական անվանումներից մեկն է դառնում Ք.ա. III հազարամյակից: Այս դեպքում վերաբերում է Հայկական լեռնաշխարհի հարավին: Մի քանի տող հետո այս երկրանունն օգտագործվում է որպես Արգիշտի I-ի պետության անվանում:*

*2. Նամրի/ու: Գտնվել է զագրոսյան լեռներում, Դիյալա գետի միջին և վերին հոսանքների շրջանում, տե՛ս* ***Н. В. Арутюнян,*** *Топонимика Урарту, с. 150.*

*3. Թվարկված «երկրները» արամեական ցեղատարածքներ էին Միջագետքում, Բաբելոնիային մերձ շրջաններում:*

*4. Բառացի՝ «իր ձեռքը չէր մեկնել»:*

*5. Էնլիլ աստծո կինը: Նորասորեստանյան դարաշրջանում ընկալվում էր արդեն որպես Աշշուր աստծո կին, երբ վերջինս սկսեց նույնացվել Էնլիլ աստծուն:*

*6. Տեքստը նկատի ունի զորավար Շամշի-իլուին:*

*7. Տեքստը նկատի ունի Ուրարտուի արքա Արգիշտի I-ին (780–760-ական թթ.):*

*8. Անզու(դ)/Զու/Իմ-Դուգուդ: Առասպելական թռչուն, հաճախ նույնանում էր փոթորկի հետ (Իմ-Դուգուդ՝ շում. փոթորիկ):*

*9. Կրկին նկատի է առնվում Շամշի-իլուն:*

9.

## ԹԻԳԼԱԹՊԱԼԱՍԱՐ III-Ի ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ

***Հանրագումարային արձանագրություն։ Հայտնաբերվել է Կալխուից (Կալախ, ներկայիս Թելլ-Նիմրուդ հնավայրը Իրաքում), պահպանվել է հատվածաբար, բեկորները պահվում են Լոնդոնի Բրիտանական թանգարանում։ Տեքստը կազմվել է ասորեստանյան Թիգլաթպալասար (Թուկուլթի-ապլ-էշարրա) III արքայի գահակալության շրջանում (744-727)։***

***Թարգմանությունը տրվում է ըստ*** **H. Tadmor,** The Inscriptions of Tiglath-Pileser III King of Assyria, Critical Edition, with Introductions, Translations and Commentary, Jerusalem, 1994, Summary Inscriptions *1* ***հրատարակության։ Մեջբերվում է հատվածաբար։***

***(1-20ա։ Տրվում է դեպի Բաբելոնիա, արևմտյան Իրան և արամեական ցեղերի դեմ իրագործված արշավանքների ամփոփ նկարագրությունը)։***

*(20բ - 24ա) Սարդուրին՝ ուրարտացին, ընդվզեց իմ դեմ և Մատիիլուի[1] հետ (միասին իմ դեմ) դավեր նա նյութեց։ Քիշթան և Խալպի[2] երկրներում՝ Կում(մ)ուխ[3] (երկրի[4]) շրջաններում, պարտության մատնեցի ես նրան և գրավեցի նրա ողջ ճամբարը։ Նա սարսափեց իմ ահեղ զենքերից և աննկատ փախավ՝ փրկելու (համար) իր կյանքը։ Ես փակեցի նրան Տուրուշպայում[5]՝ իր քաղաքում, և նրան իր քաղաքի դարպասների առջև մեծ կորուստներ պատճառեցի։ Ես բարձրացրի իմ արքայական պատկերը Տուրուշպայի դիմաց։*

*(24բ - 29) 70 «կրկնաժամ ճանապարհ»[6] Ուրարտու ընդարձակ երկրում ես հպարտորեն անցա ծայրեծայր[7] (և) չհանդիպեցի դիմադրության[8]։ Ուլլուբա[9] երկիրն ամբողջությամբ, Բիթիրրուն[10], Պարխուն, Թաշուխան, Մանտունը, Սարդաուրիաննան, Դիուլլանա-Նալը[11], Սիկիբսան, Աշշուրդայը, Բաբութթան, Լուսիան, Կասսիան[12]՝ Ուրարտուի ամրոցները, որոնք Նալ[13] լեռան հետևում են, ես կցեցի Աշշուրին։ Ուլլուբա (երկրում) ես քաղաք կառուցեցի (և) անվանեցի այն Աշշուր-իքիշա։ Իմ ներքինուն ես հաստատեցի այնտեղ որպես նահանգապետ։*

*(30 - 36) Էնու, Սասսու, Լուպսա, Լուկիա, Շիմիրրա, Ուշուրնու, Ուզուրրա, Աուիբի, Ուբուլա[14] քաղաքները՝ մինչև Բիրդաշու լեռը, ես*

Հավելեցի «գլխավոր մատովակի» նահանգին[15]: Կուտա, Ուրրա, Արանա, Թասու, Ուալլիա քաղաքները՝ մինչև Եփրատ գետը (և) մինչև Կումմուխի սահման, Կիլխսա, Էգեղա, Դիու(յ)ալլի, Աբբիսսա, Խարբիսիննա, Թասա (քաղաքները), Էնզի երկիրը, Անգանու և Բենզու քաղաքները՝ Ուրարտուի ամրոցները (ընդհուպ) մինչև Կալլա[...] գետը ես նվաճեցի և կցեցի Աշշուրին: Ես հավելեցի դրանք «գլխավոր զորահրամանատարի» տան նահանգին[16] և Նաիրի[17] նահանգին:

1. Մատի-իլուն Արպադի (Բիթ-Ագուսի) թագավորն էր, այս ժամանակաշրջանում՝ Սարդուրիի դաշնակիցը:

2. **Քիշթան և Խալպի** – Կումմուխ երկրի քաղաքներից: Համադրվում են Քյուշթան և Խալֆեթի բնակավայրերի հետ: Տե՛ս **Н. В. Арутюнян,** Топонимика Урарту, с. 112-113, 222:

3. **Կումմուխ** – երկիր Եփրատ գետի մեծ ոլորանի և ներկայիս Մալաթիայի լեռների միջև, անտիկ աղբյուրների Կոմմագենեն:

4. Բնագրում երկրանունը կրում է «քաղաք» որոշիչը:

5. Այսպես է հանդես գալիս ուրարտական տերության մայրաքաղաք Տուշպան ասորեստանյան աղբյուրներում, հայկական Վան-Տոսպը:

6. Աքադ. beru, մոտավորապես 10կմ:

7. Բառացի «վերևից ներքև»:

8. Բառացի՝ «չունեցա հակառակորդ»:

9. Երկիր Հայկական լեռնաշխարհի հարավում՝ Արևելյան (Հայկական) Տավրոսի և Տիգրիս գետի վերին հոսանքի միջև: Ամփոփ տե՛ս **Н. В. Арутюнян**, Топонимика Урарту, с. 205-206.

10. Այլ ընթերցմամբ՝ Կաշտիրրու: Տե՛ս **И. М. Дьяконов,** Ассиро-вавилонские источники по истории Урарту, "Вестник древней истории", М., 1951, № 2-4, № 42 (20),

11. Այսպես է հրատարակչի մոտ: Սակայն տե՛ս և հմմտ. **Ի. Մ. Դյակոնով**, նույն տեղում:

12. Բնագրում՝ «Կասսիա (Kás-si-a)». Հրատարակիչն առաջարկում է «Թապսիա» ընթերցումը՝ բերելով որոշ փաստարկներ, տե՛ս **H. Tadmor,** The Inscriptions of Tiglath-Pileser III King of Assyria, Critical Edition, with Introductions, Translations and Commentary, Jerusalem, 1994, Summary Inscriptions 1, էջ 126 (27-րդ տողին տրված ծանոթությունը):

13. Նալ լեռը գտնվում է Կորդվաց լեռների շրջանում, Տիգրիսի հոսանքից ոչ հեռու:

14. Ընթերցումը պայմանավորող փաստարկները տե՛ս **H. Tadmor,** The

*Inscriptions of Tiglath-Pileser III King of Assyria, Critical Edition, with Introductions, Translations and Commentary, Jerusalem, 1994, Summary Inscriptions 1,* ***էջ 126 (31-րդ տողին տրված ծանոթությունը):***

*15.* ***Նահանգ Ասորեստանի հյուսիս-արևմուտքում՝ Կաշիյարի լեռների շրջանում: Տե՛ս S. Parpola,*** *The Correspondence of Sargon II, Part I, Letters from Assyria and the West, State Archives of Assyria, I, Helsinki, 1987* ***(կից քարտեզը):***

*16.* ***Գլխավոր զորավարի նահանգը գտնվել է Եփրատի մեծ ոլորանի շրջանում, Կումմուխ երկրի հարևանությամբ (И. М. Дьяконов, № 42, прим. 14): Տե՛ս նաև S. Parpola,*** *The Correspondence of Sargon II, Part I, Letters from Assyria and the West, State Archives of Assyria, I, Helsinki, 1987* ***(կից քարտեզը):***

***17. Ասորեստանյան Նաիրի նահանգը գտնվում էր Տիգրիսի վերին հոսանքի շրջանում, նահանգային կենտրոնն էր Ամիդու (այժմ՝ Դիարբեքիր) քաղաքը: Ամփոփ տե՛ս M. Salvini****, Nairi, Na'iri, in: O. Edzard (Hrsg.), Reallexikon für Assyriologie (Hrsg. D.O. Edzard), Berlin - New York, IX, 1./2., 1998,* ***էջ 87-91:***

## *10.*

## *ՏՈՒՇՊԱՆ ՆՎԱՃԵԼՈՒ ԿՈՉ*

***Զեկուցագիր: Հայտնաբերվել է Կալխուից (Կալախ, ներկայիս Թելլ-Նիմրուդ հնավայրը Իրաքում), պահվում է Բաղդադի Իրաքի Ազգային հնագիտական թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունի գրագրությունների շարքին: Թիգլաթ-պալասար III արքայի (՞) գահակալության շրջան (744-727):***

***Առաջին անգամ հրատարակել է Հարրի Սագսը (H. W. F. Saggs,*** The Nimrud Letters, 1952. Part IV – The Urartian Frontier, “Iraq”, vol. ***20, 1958, № XLV): Թարգմանությունը տրվում է ըստ H. W. F. Saggs***, The Nimrud Letters, 1952, “Cuneiform Texts from Nimrud”, vol. V, London, ***2001, ND 2673 հրատարակության: Մեջբերվում է մասնակի՝ դիմային կողմը:***

***(ԴԿ 1) Արքային՝ տիրոջս, քո ծառա*** *[xxx]*: ***Ամենա-ամենա բարին արքայի՝ տիրոջս հետ թող լինի:***

***(ԴԿ 4) Նախկինում, երբ արքան՝ իմ տերը, գնացել էր (դեպի) Ուրարտու (երկիր), Աշշուրն ու Շամաշը հանձնեցին Տուրուշպա քաղաքը արքայի՝ տիրոջս ձեռքը[1]: Թող արքան՝ իմ տերը, ճանապարհ բռնի դեպի Ուրարտու, թող նրանք[2] գրավեն Տուրուշպան: Թող արքան՝ իմ տերը, ընդմիշտ հավերժացնի իր անունը[3]: Գուցե արքան՝ իմ տերը, կրկին ամայացնի*** *[...]*:

*(ԴԿ 12) Ինչ վերաբերում է արքայական կնքված նամակին, որը արքան՝ իմ տերը, ուղարկել էր ինձ, ես ետ գնացի (և) հարցրեցի Պարնի-ալդեին[4]: Նա ասաց. «Արքան՝ իմ տերը [...]» (տեքստը պակասավոր է):*

*1. Բառացի՝ «... դրեցին արքայի՝ տիրոջս ձեռքերի մեջ»:*

*2. Նամակագիրը հավանաբար նկատի ունի ասորեստանյան արքայի զորքերը:*

*3. Բառացի՝ «Թույլ տա, որ իր անունը հիշվի ընդմիշտ»:*

*4. Ոչ-ասորեստանյան անուն է: Դրա կազմության -aldi ձևից ելնելով, կարելի է կարծել, որ անունը թեոֆոր է. նրանում հնարավոր է տեսնել Ուրարտուի դիցարանի գերագույն աստված Խալդիի անունը: Թոփուզավայի ուրարտա-ասորեստանյան երկլեզու արձանագրության ասորեստանյան տեքստում ուրարտական Haldi դիցանունը հիշվում է նաև Aldi տարբերակով: Անվան կազմության շուրջը տե՛ս **H. W. F. Saggs,** The Nimrud Letters, 1952. Part IV – The Urartian Frontier, էջ 197:*

*11.*

ՈՒՐԱՐՏՈՒՆ՝ ԷԹԻՈՒՆՅԱՆ ԳՐՈՀՆԵՐԻ ԹԻՐԱԽ

***Զեկուցագիր: Հայտնաբերվել է Կալխուից (Կալախ, ներկայիս Թել-Նիմրուդ հնավայրը Իրաքում), պահվում է Բաղդադի Իրաքի Ազգային հնագիտական թանգարանում: Այն պատկանում է ասորեստանյան արքունիք ուղարկված «հետախուզական» բնույթի տեքստերի շարքին: Թիգլաթպալասար (Թուկուլթի-ապալ-է-շարրա) III (744-727) կամ Սալմանասար (Շուլմանու-աշարեդ) V (727-722) արքաների (?) գահակալության շրջան:***

***Առաջին անգամ հրատարակել է Հարրի Սագսը* (H. W. F. Saggs,** The Nimrud Letters, 1952. Part IV – The Urartian Frontier, "Iraq", vol. ***20, 1958, № XLVIII): Թարգմանությունը տրվում է ըստ* H. W. F. Saggs,** The Nimrud Letters, 1952, "Cuneiform Texts from Nimrud", vol. V, London***, 2001, ND 2453 հրատարակության:***

*(ԴԿ 1) Արքային՝ տիրոջս, քո ծառա [xxx]: Ամենաբարին արքայի՝ տիրոջս հետ թող լինի:*

*(ԴԿ 4) Ես մոտեցա Իրրունին, հիմնահատակ քանդեցի: Ես մտա Բիրդունու, հիմնահատակ քանդեցի: Ես հեռանում եմ, ես դուրս եմ գալիս (արշավանքի):*

*Մխգուցե արքան, իմ տերը, կասի. «ինչ տեղեկություններ (կան) Ուրարտուի մասին»: Երկու անգամ էթխունացիները ընդվզել են նրա[1] դեմ: Նրանք (ռազմական) կորուստներ են պատճառում նրան: Նրանք թալանել են նրան: Երրորդ անգամ (նրանք միավորվում են) նրա դեմ: Ուրսան[2] դուրս է եկել Տուրուշպայից և մեկ անգամ ևս արշավում է էթխունացիների դեմ: Երբ ես ինքս մտա Սուրուդուրիանի քաղաքը, այն քաղաքների համար, որոնց ես մղեցի (ապստամբելու) Զաբի այն կողմում, մի գերյալ եկավ Ուրսայի մասին (տեղեկություններով): Նա ասաց. «երբ Աշշուրի զորքերը երրորդ անգամ գնան քո ետևից, (ես ինքս քեզ ցույց կտամ) ճանապարհը»:*

*1. Տեքստը նկատի ունի Ուրարտուի արքային:*

*2. Այսպես է հնչել, ըստ ակադ. բացառությունների, ուրարտական այս արքայանունը ասորեստանյան աղբյուրներում: Սա Ուրարտուի արքա Ռուսա I-ն է (730–710-ական թթ.):*

*12.*

*ԱՐԴԻՆԻ-ՄՈՒԾԱԾԻՐ ԵՐԿՐԻ ՔՐՄԱՊԵՏ-ԱՐՔԱ ՈՒՐԶԱՆԱՆ ԵՎ ԱՍՈՐԵՍՏԱՆՑԻՆԵՐԸ*

***Նամակ: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունիքի հետ այլ երկրների տիրակալների ունեցած գրագրությունների շարքին: Սալմանասար (Շուլմանու-աշարեդ) V (727–722) կամ Սարգոն (Շարրու-ուկին) II (721–705) արքաների (՞) գահակալության շրջան:***

***Թարգմանությունը տրվում է ըստ* G. B. Lanfranchi**, **S. Parpola,** The Correspondence of Sargon II, Part II, Letters from the Northern and Northeastern Provinces, State Archives of Assyria, V, Helsinki, ***1990, № 147 հրատարակության:***

*(Դկ 1) Ուրզանայի[1] նամակը[2] արքունի սենեկապետին: Առողջություն քեզ:*

*(Դկ 4) Այն մասին, ինչ դու գրեցիր ինձ. «Արդյո՞ք Ուրարտուի արքան ճանապարհին է ժողոված զորքերով, որտե՞ղ է նա իջևանելու», Վախսի[3] երկրի մարզպետը և մարզպետը, որը (հարևան*



**Մուսասիրի տաճարը (վերակազմություն)**

*է) ուկկայցիներին[4], եկել են և ծիսակատարություն են անում տաճարում[5]: Նրանք ասում են.*

*(ԴԿ 13) «Արքան գալիս է, նա իջևանել է Վախիում, և մնացյալ մարզպետները գալիս են Մուծածիր[6]՝ ծիսակատարություն անելու»:*

*(ՀԿ 3-12) Այն մասին, ինչ դու գրեցիր ինձ. «(Թող) ոչ ոք ծես չիրագործի առանց արքայի թույլտվության», երբ Աշշուրի արքան եկավ այստեղ, կարողացա՞ ես նրան ետ պահել: Նա արեց այն, ինչ արեց: Ուրեմն ինչպե՞ս ես ետ պահեմ այս մեկին[7]»:*

*1. Ուրզանան Մուծածիր երկրի քրմապետ-արքան էր:*

*2. Բառացի «(արձանագիր) աղյուսակ»-ը:*

*3. **Վախի** (Վազաե, Ուազաուն կամ Ուեսի) – ուրարտական նահանգ, գտնվել է Ուրմիա լճի հարավ-արևմտյան շրջաններում, ունեցել ռազմավարական մեծ նշանակություն:*

*4. **Ուկկու, «ուկկայցիներ»** – լեռնային երկիր Հայկական լեռնաշխարհի հարավում, Կորդվաց լեռների շրջանում, Կումմե երկրի հարևանությամբ:*

*5. Նամակագիրը նկատի ունի Մուծածիրի գլխավոր՝ Խալդի աստծո տաճարը, որը տարածաշրջանում ուներ պաշտամունքային մեծ նշանակություն:*

*6. Մուծածիրը (ուրարտական աղբյուրներում՝ Արդինի) խոշոր պաշտա-*

*մունքային կենտրոն էր, ուներ համընդհանուր ճանաչում: Գտնվել է ներկայիս Իրաքի հյուսիս-արևելքում, Ռովանդուզ բնակավայրի մոտ, համադրվել է Մուջեսիրին: Ամփոփ տե՛ս* ***R. M. Boehmer,*** *M. Salvini, Musasir, in: D.O. Edzard (Hrsg.), Reallexikon für Assyriologie (Hrsg. D.O. Edzard), Berlin - New York, vol. VIII, 1993-1997,* ***էջ*** *444-ից:*

*7. «Այս մեկին» ասելով նկատի է առնվում Ուրարտուի արքան, ամենայն հավանականությամբ՝ Ռուսա I-ը:*

## *13.*

## *ՍԱՐԳՈՆԻ ՆԱՄԱԿԸ ՌՈՒՍԱՅԻՆ*

***Արքայական նամակ: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքայի կողմից անձամբ ուղարկված (կամ գրագրի կողմից այդպես ձևակերպված) «միջպետական» նամակագրության շարքին: Սարգոն (Շարրու-ուկին) II արքայի գահակալության շրջան (721-705):***

***Թարգմանությունը տրվում է ըստ S. Parpola, The Correspondence of Sargon II, Part I, Letters from Assyria and the West, State Archives of Assyria, Helsinki, I, Helsinki, 1987, № 8 հրատարակության:***

(ԴԿ 1-11: Սկիզբը կորսված է, պահպանված տեքստի սկզբնամասը՝ խիստ վնասված, պահպանվել են առանձին հատվածներ):

*(ԴԿ 12) Այն մասին, ինչ դու [գրեցիր ինձ, «.......»]*

*(ԴԿ 13) պար[տություն ......]*

*(ԴԿ 14) Այն մասին, ինչ դու գր[եցիր ինձ, «.......»]*

*(ԴԿ 15) արքայական թիկնապահին [......]*

*(ԴԿ 16-18: Տեքստն անընթեռնելի է):*

*(ԴԿ 19) [......] ինչու՞ [......]*

*(ԴԿ 20) դու ձեռքերդ [մեկնեցիր] մանայական տարածքների վրա [......]*

(ԴԿ 21-24: Տեքստն անընթեռնելի է, պահպանվել են առանձին բառեր)

*(ԴԿ 25) [Այն մասին, ինչ դ]ու ասացիր, «Ես [......»]*

*(ԴԿ 26) [......] մանացիների [......]*

* * *

*(Հկ 1) Կա՞ մի ծառա, որը չի [......] մասին:*

(Հկ 2-4 տողերը ջնջվել են գրչի կողմից)

*(Հկ 5) [Ինչ վերաբերում է] քո այս մարզպետին, որի մասին դու գրեցիր, «[......], նա (իմ) մարզպետն է», երբ նա լսեց, որ [......] ազատված է, նա անհայտացավ, ասելով՝ «Թող ես գնամ [ու գրկեմ Աշշուրի արքայի ոտքերը», այդպես էլ նա արեց, և ժամանակին] Աշշուրում ես այս մարդուն դա[րձրի] գլխավոր զորահրամանատար [......]: Մի՞թե հարեմում [ներքինիներ] չեն մահանում ամեն օր: Այն մեկը, որը [......] ապստամբեց քո դեմ (և) ձախողվեց [......]. Դու գահընկեց արեցիր Ինուրթա-Բել-ուծուրի որդուն իր գահից և դարձ[րիր......]: Ի հակառակ, ես պատրաստվում եմ գահընկեց անել այս մեկին [......]:*

*(Հկ 13) Այն մասին, ինչ դու գրեցիր ինձ, «...[......], նա կպատմի քեզ: Ես հարցրեցի նրան, և նա պատմեց ինձ: «Իմ հանցանքը [......, իմ] պաշտոնակիցներից մեկը գրեց ինձ. «Մի [..., ......]»: Ես վախեցա և (ոչինչ) չասացի, բայց փախա [......]»:*

*(Հկ 17) [Այն մասին, ինչ դու գ]րեցիր, «Նկատի ունենալով այն, ինչ ես ասացի նրան [......], վերադարձրու քո [.... : ......] միասին»: Սա այն է, ինչ նա ասաց ինձ: [Դա] այսպես է, [երբ] ես փախա [......] պայմանագրում [......]:*

(Հկ 21-22: Թարգմանության համար տեքստը խիստ պակասավոր է):

*14.*

### *ՌՈՒՍԱՆ ՋԱԽՋԱԽՈՒՄ Է ԱՍՈՐԵՍՏԱՆՑԻՆԵՐԻՆ*

***Ձեկուցագիր: Հայտնաբերվել է Կալխուից (Կալախ, ներկայիս Թել-Նիմրուդ հնավայրը Իրաքում), պահվում է Բաղդադի Իրաքի Ազգային հնագիտական թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունի գրագրությունների շարքին: Սարգոն (Շարրու-ուկին) II արքայի (՞) գահակալության շրջան (721-705):***

***Թարգմանությունը տրվում է ըստ*** **H. W. F. Saggs**, The Nimrud Letters, 1952, “Cuneiform Texts from Nimrud”, vol. V, London, ***2001, ND 2463 հրատարակության:***

*(ԴԿ 1–2) Արքային՝ տիրոջս, քո ծառա [x...]:*

*(ԴԿ 3–13) Գլխավոր մատովակը, երբ նա հարձակման անցավ (իր) զինված ուժերով, Ուրսան եկավ (և) հաղթեց նրան: Նրանցից[1] ոչ մեկը չփրկվեց: Նա[2] (շարունակում է) առաջանալ և (այժմ) ճամբար է դնում «գլխավոր մատովակի» ամրոցների դիմաց[3]: Նա պատրաստվում է ճակատամարտ տալ:*

*(ՀԿ 1–2) Թող արքան իմանա (և) գործի (ըստ այդմ):*

*1. Նամակագիրը նկատի ունի ասորեստանյան զինվորներին:*

*2. Նկատի է առնվում Ռուսային՝ Ուրարտուի արքային:*

*3. «Գլխավոր մատովակ»-ին ենթակա նահանգի մասին տե՛ս վերը, տեքստ թիվ 9 և ծան. № 15:*

## *15.*

## *ՈՒՐԱՐՏՈՒՀԻՆ՝ ԽԱԲԽԻԻ ԹԱԳՈՒՀԻ՞*

***Ձեկուցագիր: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունի գրագրությունների շարքին: Սարգոն (Շարրու-ուկին) II արքայի գահակալության շրջան (721–705):***

***Թարգմանությունը տրվում է ըստ* G. B. Lanfranchi, S. Parpola,** The Correspondence of Sargon II, Part II, Letters from the Northern and Northeastern Provinces, State Archives of Assyria, V, Helsinki, ***1990, № 108 հրատարակության:***

*(ԴԿ 1) Արքային՝ տիրոջս, քո ծառա [xxx]: Քաջառողջություն արքային՝ տիրոջս:*

*(ԴԿ 2) Իմ սուրհանդակը, որը մշտապես գտնվում է գանձապահի մոտ, ողջունեց ինձ, ասելով.*

*(ԴԿ 4) Դու հրամայեցիր ինձ գանձապահին ասել (հետևյալը). «Սպասիր իմ սուրհանդակին, տե՛ս, ես պատրաստվում եմ գրել գանձապահին»: Ես Կիրշունայում[1] էի [...] օր, և գանձապահը ստիպված էր սպասել քո սուրհանդակին, բայց դու խոսք չուղարկեցիր, ոչ էլ քո սուրհանդակը եկավ [...]:*

*(ԴԿ 11) Այժմ, երբ [.......] երկրի մարդիկ*

(ԴԿ 12 – ՀԿ 17 տեքստը պահպանվել է հատվածաբար)

*(ՀԿ 18) Եվ (այն) անցքերը, որ (այս) երկրի մարդիկ խոսում են նրա հետ այս օրերին. «Ինչու՞ դու սա արեցիր՝ սպանել(ով) քո եղբոր քրոջն ու քո եղբոր որդուն: Այն, ինչ դու արեցիր, մենք բավականաչափ գիտենք. (գիտենք) որ դու սպանեցիր (նրան)՝ Խաբխի (երկրի) տիկնոջը, և այնուհետ դու «յուղ լցրեցիր» վրան՝ ասելով. «Ուրարտացին[2] սպանեց նրան»: (Իսկ) ուրարտուհին չի կարող նստել գահին»:*

*(ՀԿ 26) Նրանք անհիմն խոսքեր նրան ասացին. «Արքան [.......]»:*

(ՀԿ 28–29, տեքստը խիստ պակասավոր է)

* * *

*(ՁԿ 1–2) Այժմ ես (իմ սուրհանդակին) ուղարկեցի Պալատ: Երբ [......., Թող] արքան, իմ տերը, (գրի) [իր ծառային] ինչ է նա հրամայում:*

*1. Բնակավայր Ասորեստանից հյուսիս՝ Կորդվաց լեռների հարավկողմում, համադրվում է Գեփչեի հետ:*

*2. Նկատի ունի Ուրարտուի արքային:*

*16.*

*ՄԵԼԱՐՏՈՒԱՆ՝ ՈՒՐԱՐՏՈՒԻ ԱՐՔԱ՞*

***Զեկուցագիր: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական Թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունիք՝ գլխավորապես արքայորդի Սին-ախխե-էրիբային ուղղված «հետախուզական» բնույթի տեքստերի շարքին: Սարգոն (Շարրու-ուկին) II արքայի գահակալության շրջան (721–705):***

***Թարգմանությունը տրվում է ըստ* G. B. Lanfranchi**, **S. Parpola,** The Correspondence of Sargon II, Part II, Letters from the Northern and Northeastern Provinces, State Archives of Assyria, Helsinki***, V, 1990, № 90 հրատարակության:***

(Սկիզբը կորսված է)

*(ԴԿ x+2) [ու]րարտացի(ները) [...]*

*(ԴԿ 3) [...... որոնք] վախե[ցան]*

*(ԴԿ 4) [...] գաղտ[նաբար ...]*

***(ԴԿ 5-15) Նրա [մարզ]պետներից [ինը] ջախ[ջախված են[1]]. «գլխավոր մատո[վակի»] դեմ կանգնած մարզ[պետը], մեր դեմ կանգնած մարզպետը, Շա-Աշշուր-դուբբուի դեմ կանգնած մարզպետը, Մուծածիրի դեմ կանգնած մարզպետը, Վազաէ (երկրի) մարզպետը, Շիբտու[ր]ու (երկրի) մարզպետը, երկու մարզպետներ, (որոնք կանգնած են) Կար-Սիպպարի դիմաց, Շատտերա (երկրի) մարզպետը, ամբողջը՝ նրա ինը մարզպետներ ջախջախված են[2]:***

* * *

***(ՀԿ 1) Նրանց արքան, այնուամենայնիվ, աննկատ փախավ եզակի ձի (հեծած) և բարձրացավ լեռները: Ճամբարի (Թիկունքային) զորամասերը չտեսան իրենց արքային և [չ]էին գիտակցում, որ նա փր[կել է իրեն]:***

***(ՀԿ 7-10) [Ուստի, նրանք բարձր]ացրին Մելար[տուային] և արքա [հռչա]կեցին (եղարձի) ճանապարհ[ին]: Մելա[րտուան (տիրեց(՞))] [Թագավոր]ությանը [...]:***

(Շարունակությունը վնասված է):

*1. Ընթերցումն ըստ Ասկոլդ Իվանչիկի* ***(А. И. Иванчик,*** *Киммерийцы и Урарту накануне восьмого похода Саргона II, "Вестник древней истории", № 3, 1990, էջ 6), հրատարակչի մոտ՝ «սպանված»:*

*2. Խոսքը վերաբերում է Ք. ա. 715 Թ. Ուրարտու ներխուժած կիմերական ցեղերի դեմ ձեռնարկված արշավանքին, որն ավարտվեց ուրարտական բանակի ծանր պարտությամբ: Մանրամասն տե՛ս, օրինակ,* ***A. I. Ivantchik,*** *Les Cimmériens au Proche-Orient, Orbis Biblicus et Orientalis, Bd. 125, Fribourg-Suisse – Göttingen, 1993, էջ 19-55:*

## *17.*

## *ՀԱՏՎԱԾ ՍԱՐԳՈՆ II-Ի ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ*

***Հանդիսավոր արձանագրություն: Հայտնաբերվել է Խորսաբադից (Դուր-Շարրու-ուկին), տեքստը վերականգնվում է տարբեր կրկնօրինակների համադրությամբ: Սարգոն (Շարրու-ուկին) II***

*արքայի գահակալության շրջան (721–705)։*

***Առաջին անգամ հրատարակել է Հուգո Վինկլերը։ Թարգմանությունը տրվում է ըստ* A. Fuchs,** Die Inschriften Sargons II. aus Khorsabad, Cuvillier Verlag, Göttingen, ***1994, էջ 189–248; 343–355 հրատարակության։***

*(1–3ա) Պալատը Շարրու-ուկինի՝ մեծ արքայի, հզոր արքայի, տիեզերքի արքայի, Աշշուր (երկրի) արքայի, Բաբելոն (քաղաքի) կուսակալի, Շումերի և Աքադի արքայի, մեծ աստվածների սիրելիի ...*

* * *

*(36բ–44ա) Երբ մանացի Իրանզուին[1]՝ հնազանդ[2] ստրուկին, որը կրում էր իմ լուծը, տարավ ճակատագիրը, և ես բազմեցրի նրա գահին նրա որդուն՝ Ազային[3], Ուրսա ուրարտացին համոզեց Ուիշդիշի (իշխանին), Զիկերտուի (իշխանին), Միսիի (և) Անդիայի[4] (իշխան(ներ)ին)՝ մանայական մեծ կուսակալներին[5], ապստամբելու և թշնամանալու։ Ուաուշ[6] լեռան վրա, որն անմատչելի էր, նրանք նետեցին իրենց տիրոջ՝ Ազայի մարմինը։ Մանացի Ուլլուսունուն[7], որին բազմեցրին իր հոր գահին, ապավինեց Ուրսա ուրարտացուն և հանձնեց նրան ի հատուցում իր 22 ամրոցները։ Սրտիս զայրույթով ժողովեցի ես Աշշուր աստծո մեծաքանակ զորքը, ինչպես առյուծ, մոլեգնեցի ես և նպատակ դրեցի՝ նվաճելու այդ երկրները։ Մանացի Ուլլուսունուն, տեսնելով իմ զորքերի բարձրացրած թանձր փոշին, դուրս եկավ իր քաղաքից և սարսափած թաքնվեց անմատչելի լեռներում։ Իզիրտուն՝ իր արքայական քաղաքը, Իզիբիան և Արմեդը՝ իր հզոր ամրոցները ես նվաճեցի և և հրդեհեցի կրակի աստված Գիրրայի հետ։ Ուաուշ լեռան վրա, որն անմատչելի էր, Ուրսա ուրարտացու զորքերը ես կոտորեցի, և բռնեցի իմ ձեռքով նրա արքայական տոհմի 250 անդամների[8]։ Իր 8 մարդերի պարիսպներով շրջապատված 55 ամուր քաղաքները, իր 11 անմատչելի ամրոցների հետ միասին ես նվաճեցի և հրդեհեցի կրակի աստված Գիրրայի հետ։ 22 ամրոցները, որոնք (պատկանում էին) մանացի Ուլլուսունուին, ես խլեցի նրանից և կցեցի Աշշուրի սահմաններին։*

*(44բ–45ա) Տելուսինա անդիացու Տուայադի երկրամասի 8 ամրոցները ես նվաճեցի, 4200 բնակիչների իրենց գույքով և անասուններով ես գերեցի։*

*(45բ–47) Միտատտի զիկերտացին սարսափեց իմ զենքից և*

*փախավ ինքն իր երկրի մարդկանց հետ դեպի լեռները, (այնպես, որ) հնարավոր չէր գտնել նրա տեղը: Պարդան՝ նրա արքայական քաղաքը, ես հրդեհեցի կրակի աստված Գիրրայի հետ, նվաճեցի նրա շրջակայքի 23 ամրացված քաղաքները և (դրանցում եղած) գույքը տարա:*

*(48-49) Շուանդախուլն ու Զուրզուկկան՝ մանացիների երկրի քաղաքները, որոնք ապավինել էին Միտատտիին, ես նվաճեցի և դրանց գույքը տարա: Բագդատտի ուիշդիշցուն մորթազերծ արեցի, Դայաուկկուին իր ընտանիքով ես տեղահանեցի և բնակեցրի[9] Ամաթթու[10] (երկրում):*

*(50-53) Երբ մանացի Ուլլուսունուն անմատչելի լեռներում լսեց իմ սխրագործությունների մասին, թռավ-եկավ, ինչպես թռչուն, և փարվեց իմ ոտքերին: Նրա անհամար մեղքերը ես ներեցի, մոռացա նրա հանցանքները, նրան գթացի և (մեկ անգամ ևս) բազմեցրի նրան իր հոր գահին: 22 ամրոցներ, իր 2 ամրացված քաղաքների հետ միասին, որոնք ես խլել էի Ուրսայի և Միտատտիի ձեռքերից, ես նրան վերադարձրի և վերականգնեցի (կորուստը), որ պատճառվել էր իր երկրին: Ես պատրաստեցի իմ արքայական անձի պատկերը, գրեցի նրա վրա Աշշուրի՝ իմ տիրոջ հաղթանակները, կանգնեցրի այն բոլոր ժամանակների համար իր արքայական քաղաք Իզիրտուում:*

*(54) Նաիրի[11] երկրի (արքա) Յանզուից իր ամուր քաղաք Խուբուշկիայում ես ստացա հարկը ձիերով, խոշոր և մանր եղջերավոր անասուններով:*

*(55-56) (Ինչ վերաբերում է) Աշշուր-լէ՛յ կարալլացուն և Իթթիի ալլաբրիացուն[12], որոնք նետել էին Աշշուրի լուծը և լքել (նրան), ես Աշշուր-լէ՛յին մորթազերծ արեցի, իսկ Կարալլուի ողջ բնակչությանը, ինչպես նաև Իթթիին իր ընտանիքով, ես տեղահանեցի և բնակեցրի Ամաթթու (երկրում):*

* * *

*(72բ-76ա) (Ինչ վերաբերում է) Ուրզանա մուծածիրցուն, որը ապավինեց Ուրսա ուրարտացուն և մոռացավ իր (վասալային) պարտավորությունները, իմ մեծաթիվ զորքերով, ինչպես մորեխների պարս, ես նվաճեցի Մուծածիր (քաղաքը), իսկ նա, իր կյանքի փրկության համար, միայնակ փախավ և փրկեց իր գլուխը: Հաղթականորեն Մուծածիր (քաղաքը) ես մտա, նրա կնոջը, նրա որդիներին (և) դստրերին նրա, ամեն տեսակ ունեցվածք,*

Հարստություն, իր պալատի գանձերը, 20.170 մարդու իրենց ունեցվածքով, նրա աստվածներին՝ Խալդի[13] (աստծուն) և Բագմաշտու[14] (աստվածուհուն), իրենց մեծաքանակ հարստությամբ ես գերեցի:

(76բ–78ա) Ուրսան՝ Ուրարտու (երկրի) արքան, լսեց Մուծածիրի ավերման և իր Խալդի աստծուն գերեվարելու մասին, իր սեփական ձեռքերով, (իր) գոտու երկաթե դաշույնով վերջ տվեց իր կյանքին: Ողջ Ուրարտու (երկրին) ես վիշտ բերեցի, մարդկանց, որոնք բնակեցնում էին (այդ երկիրը), ես դատապարտեցի լաց ու ողբի:

* * *

(112բ–117ա) Կումմուխցի Մուտալլուն, չար խեթը, որը չէր ակնածում աստվածների խոսքից (և) չարախոսում էր, ապավինեց Արգիշտիին[15]՝ Ուրարտու (երկրի) արքային (դաշնակցին, որը չփրկեց նրան), և դադարեցրեց ուղարկել իր երկրի ամենամյա հարկն ու տուրքը, ետ պահեց իր ընծաները: Սրտիս զայրույթով իմ անձնական մարտակառքով և թիկնազորով[16], արշավեցի ես նրա դեմ: Տեսնելով իմ զորքերի բարձրացրած փոշու ամպը, նա լքեց իր քաղաքը և այլևս չհայտնվեց: Այդ քաղաքը, իր (երկրի) մնացյալ 62 ամրացված քաղաքների հետ ես նվաճեցի: Նրա կնոջը, նրա որդիներին (և) դուստրերին նրա, (նրա) ունեցվածքը, հարստությունը, իր պալատի բոլոր արժեքները, իր երկրի մարդկանց հետ ես գերեցի, ոչ մեկին չթողեցի: Երկիրը ես վերստին բնակեցրի: Բիթ–Յակին[17] (երկրի) մարդկանց, որոնց իմ ձեռքը նվաճել էր, ես այնտեղ բնակեցրի, իմ մի ներքինու[18] նահանգապետ նրանց վրա ես հաստատեցի: Իմ իշխանության լուծը նրանց վրա տարածեցի: 150 մարտակառք, 1.500 հեծյալ, 20.000 նետաձիգ և 1.000 վահանակիր և տեգավոր զինվորների ես հավաքագրեցի նրանցից և դրեցի նրա հրամանատարության ներքո[19]:

1. Մանայի արքան, կառավարել է բավական երկարատև՝ Ք. ա. 744–716 թթ. սահմաններում:

2. Բառացի՝ «ոտքի տակ ընկած»:

3. Այլ ընթերցմամբ՝ Ածա: Մանայի թագավոր, սպանվել է ուրարտական արքունիքի անմիջական աջակցությամբ բարձրացված հակամանայական խռովության ժամանակ (Ք. ա. 716 թ.):

4. Տեքստում առկա է վրիպակ. գրված է Միսիանդիա:

*5. Ուիշդիշ, Զիկերտու, Մի/եսի և Անդիա՝ Մանայի թագավորության գերիշխանությունն ընդունած երկրներ, տվյալ ժամանակաշրջանում դաշնակցել էին ուրարտական տերության հետ, վարել հակամանայական և հակաասորեստանյան քաղաքականություն:*

*6. Ուաուշը, ըստ ենթադրությունների, Սահենդ լեռն է՝ Ուրմիա լճից արևելք (3710մ):*

*7. Մանայի արքան, Իրանզու որդին և Ազայի եղբայրը:*

*8. Բառացի՝ «իր հոր տան 250 սերմը»:*

*9. Բառացի՝ «թույլ տվեցի, որ (նա) ապրի»:*

*10. Նկատի ունի հյուսիսային Ասորիքը, Համաթ քաղաքը ներկայիս Սիրիայում:*

*11. «Նաիրի» երկիր ասելով այս ժամանակաշրջանում նկատի է առնվել բացառապես Խուբուշկիա երկիրը: Վերջինս գտնվել է Ուրմիա լճից հարավ-արևմուտք, Մուծածիրի, Մանայի թագավորության, ուրարտական և ասորեստանյան տերությունների հարևանությամբ:*

*12. Կարալլու և Ալաբրիա՝ հյուսիս-զագրոսյան փոքր երկրներ, Մանայի թագավորության դաշնակիցները:*

*13. **Խալդի և Բագբարթու** – Մուծածիրի աստվածների գլխավոր զույգը:*

*14. Հնարավոր է ընթերցել նաև Բագմաշթու:*

*15. Սա Ուրարտուի արքա Արգիշտի II-ն է, իշխել է Ք. ա. 710-680-ական (՞) թթ.:*

*16. Բառացի՝ «հեծյալներով, որոնք իմ կողքին ինձ չեն լքում բարեկամական և թշնամական երկրներում»:*

*17. Բիթ-Յակին երկիրը (ցեղատարածքը) գտնվել է հարավային Միջագետքում, Եփրատ և Տիգրիս գետերի՝ ծով թափվելու վայրում: Բիթ-Յակինի նվաճումն իրականացվել էր նույն տարում:*

*18. Ասորեստանյան արքունիքում, սկսած Թիգլաթպալասար III-ի ժամանակներից, պետական բարձր պաշտոնները, այդ թվում նաև ռազմական, վստահվում էին գերազանցապես ներքինիների:*

*19. Խոսքը վերաբերում է Ք. ա. 708 թ. անցքերին: Բուն հանրագումարային տեքստը կազմվել է Սարգոն II-ի կառավարման 15-րդ տարում կամ անմիջապես հետո՝ Ք. ա. 706 թ. սահմաններում:*

*18.*

## *ԱՐԳԻՇՏԻԻ ԽՈՍՔԸ ԿՈՒՄՄԵՑԻՆԵՐԻՆ*

***Զեկուցագիր: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական Թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունի դրագրությունների շարքին: Սարգոն (Շարրու-ուկին) II արքայի (՞) գահակալության շրջան:***

***Առաջին անգամ գրչագիր տարբերակով հրատարակել է Սիմո Պարպոլան: Թարգմանությունը տրվում է ըստ* G. B. Lanfranchi, S. Parpola,** The Correspondence of Sargon II, Part II, Letters from the Northern and Northeastern Provinces, State Archives of Assyria, Helsinki***, V, 1990, № 95 հրատարակության:***

(Սկզբնամասը կորսված է)

*(Դկ 2) [...] գնաց [ն]րանց հետ [...]*

*(Դկ 3) [... «Այն ժա]մանակվանից, ինչ ես գահին եմ, չգտնվեց իրապես (որևէ մեկը), որին դուք ուղարկեիք ողջունելու ինձ, (բոլորը) գալիս են ինձ մոտ Աշշուրի և ձեր աստվածների [ան]ունից:*

*(Դկ 6) Այնուհետ նա ասաց. «Ես լսել եմ, որ դուք ահաբեկված եք, ինչու՞ եք դուք ահաբեկված, անգամ Ռուսան չէր խոսում ձեր երկիրը [կործանելու մասին, ոչ էլ ես եմ] խոսել այդ մասին»:*

* * *

*(Հկ 1) Նրանք այսպ[ես] պատասխանեցին. «Այն պահից, ինչ մենք [Աշշուրի] հպատակներն ենք, հեծելազորի ավագը (դարձել է) [մեզ առ]աջնորդ: (Միայն) Կումմեի տներն են թողնվել մեզ, [մենք իշխանություն ունենք] (միայն) դրանց վրա, մենք չենք կարող մեկնել»[1]: Սրանք էին այն խոսքերը, որ ասվեցին սուրհանդակի կողմից:*

*(Հկ 3) Հաջորդ օրը Արիյեն խ[ոս]եց [Ա]րիծայի[2] և այս ներքինու հետ, որը Կումմեում էր:*

*(Հկ 6) Նրանք հանձնեցին ձիերի կեսը հանձնակատարին, այլևս ձիեր (չեն թողնվել) ինձ զննելու (համար): [......] զորքերը [...ք]եղ [......]:*

(Հ-կ 11-14: Տողերը վնասված են, տեքստի շարունակությունը չի պահպանվել):

*1. Բառացի՝ «մենք չենք կարող մեր ոտքը ուրիշ տեղ դնել»:*

*2. Արիյե և Արիծա՝ Կումմե երկրի առաջնորդները: Ասորեստանյան գրագրություններում հիշվում են բազմիցս:*

*19.*

*ԼԱՐՎԱԾ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒՐԱՐՏՈՒԻ ԵՎ ՇՈՒՊՐԻԱՅԻ ՄԻՋԵՎ*

***Զեկուցագիր: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում: Տեքստը պատկանում է ասորեստանյան արքունիք՝ գլխավորապես արքայորդի Սին-ախխե-էրիբային ուղղված «հետախուզական» բնույթի տեքստերի շարքին: Սարգոն (Շարրու-ուկին) II արքայի գահակալության շրջան:***

***Առաջին անգամ հրատարակել է Ռոբերթ Հարպերը, ապա՝ Լերոյ Ուոթերմանը: Թարգմանությունը տրվում է ըստ*** **G. B. Lanfranchi, S. Parpola,** The Correspondence of Sargon II, Part II, Letters from the Northern and Northeastern Provinces, State Archives of Assyria, Helsinki***, V, 1990, № 31 հրատարակության: Մեջբերվում է մասնակի:***

*(Դկ 1) Արքային՝ տիրոջս, քո ծառա Շա-Աշշուր-դուբբու: Բաջառողջություն արքային՝ տիրոջս: Ամրոցներն ու երկիրն արքայի լավ են:*

*(Դկ 6) Ինչ վերաբերում է Պենզայի քրմի (մասին) լուրերին, որի մասին արքան, իմ տերը, գրել էր ինձ՝ (ասելով). «Ուրարտու (երկրի) արքան ինչ՞ ուղարկեց և վճիռ կայացրեց իր համար [Թա]սիի պաշտոնյայի մասին: Նրանք պետք է հարցնեն [......]»:*

* * *

(Դկ 13 – Հկ 1. Տեքստը պահպանվել է հատվածաբար):

* * *

*(Հկ 2) [......] Տիդու (քաղաքը/ի) [......]*
*(Հկ 3) Շուբ[րիայի սահմանա]գլխին*
*(Հկ 4) [......]... հավաքեցին(՞) [......]*
*(Հկ 5) Մար[զի ......ը ...... ցին] իրենց հանդերձանքը:*

*(ՀԿ 6) [……] կանգնած են Պումուում[1]:*

*(ՀԿ 7) Արքան, իմ տերը, գիտե որ [……]ոան՝ [Խու-Թ]եշուբի[2] գլխավոր հետախույզը, ետ տվեց Ռուսայի [……], և նա նշանակեց նրան (որպես) [….], այժմ Խու-Թեշուբի ներկայությամբ [……] չկա:*

*(ՀԿ 13) Ուրարտացին նրան՝ Պումու (քաղաք), սուրհանդակ ուղարկեց, ասելով. «Եթե դու մնաս [………, (ապա) ե]տ տուր […… և] այն գարդերը, [ո]ր իմ հայրը և ես տվեցինք քեզ»:*

*(ՀԿ 18) Սուրհանդակը, որ եկել էր, ասաց. «Մի ողջունեք Խու-Թեշուբին, և մի ընդունեք դաշնագիր (առաջարկված նրա կողմից), (այլապես) ես կպատժեմ ձեզ»:*

*(ՀԿ 22-29) Խու-Թեշուբը սուրհանդակ ուղարկեց ուրարտացու մոտ իր հանձնակատարի հետ միասին: Նա գնաց, (բայց) ճանապարհի կեսին նա ձերբակալեց նրան՝ ասելով. «(Դու ձերբակալված կմնաս) մինչև ես գնամ և խոսեմ (քո) կառավարության հետ, եթե նրանք ազատեն քեզ, դու կգն[աս] և այլևս չես վերադառնա:*

(Շարունակությունը վնասված է և կապակցված թարգմանության ոչ ենթակա):

*1. **Պումու կամ Ուպպումու** – Շուբրիայի քաղաքական կենտրոններից, նույնն է, ինչ հետագա աղբյուրների Ֆումը, տե՛ս* **Н. В. Арутюнян**, Топонимика Урарту, *էջ 208-209 (նշվ. գրականությամբ):*

*2. Ամենայն հավանականությամբ՝ Շուբրիայի արքան:*

*20.*

ԿԳՐԱՎԻ ԱՐԴՅՈ՞Ք ՌՈՒՍԱՆ ՇՈՒՊՐԻԱՆ

***Գուշակային տեքստ: Հայտնաբերվել է Նինվեից (Քույունջիք-բլուր), պահվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում: Տեքստը պատկանում է Արևի աստված Շամաշին ուղղված ռազմաքաղաքական բովանդակությամբ հարցումների շարքին: Ասսարհադդոն (Աշշուր-ախխե-իդդին, 680-669) կամ Աշշուրբանապալ (Աշշուր-բանի-ապալ, 669 – 627(՞)) արքաների (՞) գահակալության շրջան:***

***Առաջին անգամ հրատարակել է Յորգեն Կնուդսոնը: Թարգմանությունը տրվում է ըստ*** **I. Starr**, Queries to the Sungod. Divination and Politics in Sargonid Assyria, in: **S. Parpola** (Ed. In Chief), “State Archives of Assyria”, vol. IV, Helsinki, ***1990, № 18 հրատարակության:***

*(ԴԿ 1) (Ով) Շամաշ, մե՛ծն Տեր, տուր ինձ հաստատակամ (և) համոզված պատասխանը այն բանի, ինչը որ հարցնում եմ քեզ:*

*(ԴԿ 2) Այս օրվանից, այս Նիսան[1] ամսի [...] օրվանից մինչև այս (նույն) տարվա Թամմուզ[2] ամսի առաջին օրը, [...] օրերի և գիշերների ընթացքում՝ նախանշված ժամկետը (այս) գուշակությունն իրականացնելու համար, այս նախանշված ժամկետում (արդյո՞ք) Ուրսան, Ուրարտուի արքան, ում նրանք կոչում են Յայա, [...] ում նրանք կոչում են արքա Պա[......] երկրի, փորձու՞մ է, ծրագրու՞մ է նա [արդյոք ...] կամ հետևելով խորհրդին իր խորհրդատուների, իր բանակի հետ կամ կիմմերների հետ կամ իր դաշնակիցներից մեկ ուրիշի հետ, այնտեղից, որտեղ գտնվում են, կընկնե՞ն ճանապարհ՝ պատերազմ մղելու, կործանելու, թալանելու և ավարի մատնելու, (և) կգա՞ն Շուբրիա, արդյո՞ք (կուղղվեն) դեպի Պումու քաղաքը կամ դեպի Կուլլիմերի[3] քաղաքը՞, կամ Շուբրիայի ամրացված (այլ) քաղաքները՞:*

*(ԴԿ 10) Կոչնչացնե՞ն նրանք այն, ինչ հնարավոր է ոչնչացնել, կթալանե՞ն այն, ինչ հնարավոր է թալանել և ավարի կմատնե՞ն այն, ինչ հնարավոր է ավարառել: Կյուրացնե՞ն նրանք շուբրիական ամրոցները՝ սակավ թե բազում, և կդարձնե՞ն (դրանք) իրենցը:*

*(ԴԿ 12) Քո մեծ աստվածությունը գիտե՞ դա: Դա վճռվա՞ծ է, հաստատվա՞ծ դրական (կանխանշանով), հրամանով քո մեծ աստվածության, (ով) Շամաշ, մե՛ծն Տեր: Նա, ով կարող է տեսնել, կտեսնի՞ այն: Նա, ով կարող է լսել, կլսի՞ այն:*

* * *

(ԴԿ 14 – ՀԿ 4: Տրվում է գուշակությանն առնչվող կաղապարային բանաձևերի շարադրանքը):

*(ՀԿ 5) Հարցնում եմ քեզ, (ով) Շամաշ, մե՛ծն Տեր, արդյո՞ք այս օրվանից, (այս) Նիսան ամսի [...] օրվանից մինչև այս (նույն) տարվա Թամմուզ ամսի առաջին օրը, Ուրսան, Ուրարտուի արքան, իր բանակի հետ, կընկնի՞ ճանապարհ այնտեղից, որտեղ գտնվում է, և կգա՞ Շուբրիա:*

*(ՀԿ 8) (Արդյո՞ք) նրանք կոչնչացնեն այն, ինչ հնարավոր է ոչնչացնել, կթալանեն այն, ինչ հնարավոր է թալանել, ավարի կմատնեն այն, ինչ հնարավոր է ավարառել Շուբրիայի քաղաքներում, (և արդյո՞ք) նրանք կյուրացնեն Շուբրիայի քաղաքները, սակավ թե բազում, և կդարձնե՞ն (դրանք) իրենցը:*

*(ՀԿ 10) Ներկա եղիր այս զոհաբերությանը, դիր (նրա վրա) հաստատակամ (և) համոզված պատասխանը, դրական (նախա)նշաններ, դրական, նպաստավոր [գուշակություններ]՝ քո մեծ աստվածության կանխագուշակ հրամանով, և թող ես տեսնեմ (դրանք):*

* * *

(ՁԿ 1–3. Հետևում է գուշակությունը կատարած անձանց թվարկումը: Պահպանվել են թվով ութը անձնանուններ):

*1. Բաբելոնյան օրացույցի առաջին ամիսը, համապատասխանում է մարտ-ապրիլ ամիսներին:*

*2. Բաբելոնյան օրացույցի չորրորդ ամիսը, համապատասխանում է հունիս-հուլիս ամիսներին:*

*3. **Կուլլիմերի** – Շուբրիայի քաղաքական կենտրոններից, նույնն է, ինչ բյուզանդական աղբյուրների Խլոմարոնը, հայկական աղբյուրներում՝ Քղիմար, տե՛ս* Н. В. Арутюнян, Топонимика Урарту, *էջ* 117-118 *(նշվ. գրականությամբ):*

## ԱՍՈՒՐԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ԴԵՊԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀ ԸՍՏ ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑՈՒ

***Դիոդորոս Սիկիլիացին հունական դասական պատմագրության աչքի ընկնող դեմքերից մեկն է: Նա ծնվել է մոտավորապես Ք. ա. 90 թ. Սիցիլիա կղզու Ագիրիա քաղաքում: Երկար տարիներ ճանապարհորդել է Եվրոպայում, Ասիայում և Աֆրիկայում: Կյանքի վերջին տարիներին հաստատվել է Հռոմում, ուր և մահացել է մոտավորապես Ք. ա. 23 թ.: Դիոդորոսը հռչակվել է «Պատմական գրադարան» խորագիրը կրող երկասիրությամբ, որի վրա նա աշխատել է 66–36 թվականներին: Այս աշխատությունը բաղկացած է եղել 40 գրքերից, որոնցից մեզ են հասել միայն 1–5-րդ և 11–25-րդ գրքերը, իսկ մյուսներից պահպանվել են միայն հատուկտորներ, պատառիկներ: Դիոդորոսի երկն ընդգրկում է Արևելքի երկրների, Եգիպտոսի, Հունաստանի և Հռոմի պատմությունը՝ նախապատմական ժամանակներից սկսած մինչև 60–59 թվականը: Փաստորեն, սա համաշխարհային պատմությունը շարադրելու ուղղությամբ կատարված անդրանիկ փորձն է:***

*«Պատմական գրադարանի» առանձնահատուկ նշանակությունը կայանում է նրանում, որ այն գրված է մեծ թվով աղբյուրների հիման վրա, այդ թվում՝ մի շարք մեզ չհասած աղբյուրների, որոնց համառոտ կամ բառացի բովանդակությունը վերաշարադրելով՝ Դիոդորոսը դրանք փրկել է անխուսափելի ոչնչացումից: Դիոդորոսի երկում արժեքավոր տեղեկություններ են պահպանվել նաև հայ ժողովրդի պատմության տարբեր հարցերի և հատկապես Ք. ա. III–II դդ. անցքերի վերաբերյալ: Սակայն, «Պատմական գրադարանի» առաջին հինգ գրքերը, որոնք ընդգրկում են համաշխարհային պատմության առասպելական շրջանը, պարունակում են հիմնականում լեգենդար տեղեկություններ՝ ժամանակագրական մեծ խառնաշփոթություններով լի: Այստեղ, Ասիայի երկրների պատմությունը շարադրելիս, Դիոդորոսի համար աղբյուր է ծառայել V դ. վերջերի և IV դ. կեսերի հույն նշանավոր պատմագիր Կտեսիասի «Պերսիկա» («Պարսկականք») երկը: Դիոդորոսի միջնորդությամբ մեզ հասած Կտեսիասի սույն երկում խոսվում է նաև Ք. ա. IX դարի վերջերին Հայաստանում տեղի ունեցած որոշ իրադարձությունների մասին, սակայն ուսումնասիրողները ցույց են տվել այդ տեղեկությունների առասպելական բնույթը և գտել, որ դրանք աղավաղված ձևով են ներկայացնում պատմական իրականությունը:*

*Դիոդորոսից ստորև բերված հատվածները տրվում են Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ՝* «Diodori Bibliotheca Historica, vol I-V, Lipsiae, 1866-1868» *հրատարակությունից:*

ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ

ՊԱՏՄԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ

## Գիրք II, գլ. I

*8-10. Այնուհետև Նինոսը[1] մեծ զորքով ներխուժելով Արմենիա[2], մի շարք քաղաքներ ավերելուց հետո կոտորեց տեղի բնակիչներին. ուստի և նրանց թագավոր Բարզանեսը[3], տեսնելով, որ ինքն ի վիճակի չէ նրա դեմ կռվելու, առատ նվերներով դիմավորեց նրան և ասաց, որ ինքը կկատարի նրա բոլոր հրամանները: Իսկ Նինոսը նրան վերաբերվեց մեծահոգաբար և համաձայնվեց, որ նա տիրի Արմենիային և, մնալով որպես իր բարեկամը, զորք ուղարկի և միջոցներ՝*

*իր բանակի համար: Եվ նա, առավել ևս հզորանալով, արշավեց Մեդիայի վրա: Եվ այս երկրի թագավոր Փառնոսը[4] նշանակալից զորքով դուրս եկավ նրա դեմ, բայց պարտվելով, իր զինվորների մեծ մասին կորցրեց, իսկ ինքը իր յոթ որդիների և կնոջ հետ գերի վերցվելով, խաչ բարձրացվեց:*

## Գիրք II, գլ. XI

*4. Շամիրամը[5] (բնագրում՝ Սեմիրամիս) Հայկական լեռներից[6] մի քար կտրեց, երկարությունը 130 ոտնաչափ, իսկ լայնքը և հաստությունը՝ 25: Նա զորքերի և եզների բազմաթիվ լծերով այդ քարը իջեցրեց դեպի գետը և այնտեղ բարձրացրեց լաստի վրա ու դրանով հոսանքն ի վար բերելով մինչև Բաբելոնիա, այն կանգնեցրեց ամենաերևելի ճանապարհի կողքին, որպես զարմանալի տեսարան այնտեղից անցնողներին: Ոմանք այն, իր ձևի պատճառով, անվանում են կոթող և համարում այսպես կոչված յոթ հրաշալիքներից մեկը:*

*1. Ըստ Կտեսիասի խառնափնթոր ժամանակագրության, սա թագավորել է Ք. ա. XIII դարի առաջին կեսին և հանդիսացել է ասորեստանյան հզորության հիմնադիրը: Սակայն, ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, Կտեսիասի պատմության այս հատվածում ոչինչ չկա, որ կարելի լինի վերագրել Ասորեստանի որևէ թագավորի: Նարքևում բերված նվաճումների ցուցակը ուրվագծում է Աքեմենյանների, և ոչ Ասորեստանի, պետության ընդարձակումը, Ասորեստանյան թագավորների ցանկում բացակայում է Նինոսի անունն անգամ, իսկ քանի որ ավանդական պատմագրությունը (Կտեսիաս, Մովսես Խորենացի) Նինոսին ճանաչում է Ասորեստանի թագավոր և ամուսինը հռչակավոր Շամիրամի (Շամմուրամաթ, Սեմիրամիս), ըստ այդմ էլ, այժմ ընդունված է նրան նույնացնել Շամիրամի ամուսին, Ասորեստանի թագավոր Շամշի-Ադադ V-ի (823-811) հետ, որն, իրոք, 823-820 թվականներին արշավանքներ է կազմակերպել դեպի Ուրարտու-Նաիրի և Մարաստան:*

*2. Արմենիա ասելով՝ Դիոդորոսը այս դեպքում նկատի ունի Հայկական լեռնաշխարհն իբրև աշխարհագրական հասկացություն. նկարագրված դեպքերի ժամանակ դեռևս չկար Արմենիա պետական կազմավորումը: Դիոդորոսը պատմական հետագա շրջանի անվանումով բնորոշում է իր համար առավել անհայտ հին շրջանը:*

*3. Առասպելական անձնավորություն: Շամշի-Ադադ V-ի ժամանակաշրջանում Ուրարտուի թագավորն էր Իշպուինին (մոտ 825-810):*

*4. Դարձյալ առասպելական անձնավորություն է. պետք է նկատել, որ մա-*

*րական արքայացանկը սկսվում է Դեյովկեսով (727-675), իսկ Ք. ա. IX դարի վերջերին այստեղ դեռևս պետական կազմավորումներ գոյություն չունեին:*

*5. **Շամիրամ** (Շամմուրամաթ, Սեմիրամիս) – Ասորեստանի կիսաառասպելա-կան-կիսապատմական թագուհի: Ըստ ասուրական առասպելի՝ Շամիրամը եղել է Դերկետո աստվածուհու դուստրը և հանդիսացել է պտղաբերության և սիրո աստվածուհին: Ամուսնացել է Ասորեստանի Նինոս թագավորի հետ, որից ունեցել է Նինուաս անունով որդուն: Շամիրամը կառուցել է Բաբելոն քաղաքը, գրավել է Եգիպտոսը, Եթովպիան և Լիբիան, իսկ այնուհետև արշավել է դեպի Բակտրիա ու Հնդկաստան: Հայտնի էր իր գեղեցկությամբ, վավաշոտությամբ և պատե-րազմասեր բնավորությամբ: Նրա պաշտամունքը մտել է նաև Հայաստանի և կապակցվել Արա Գեղեցիկի կերպարի հետ:*

*Ինչպես վկայում են պատմական վավերագրերը, Ք. ա. IX դարի վերջերին Ասորեստանում իշխել է Շամմուրամաթ անունով թագուհի (810-806)՝ Շամշի-Ադադ V-ի կինը և Ադադ-Ներարի III-ի (810-783) մայրն ու խնամակալուհին: Սրա օրոք Ասորեստանի և Ուրարտուի միջև մի շարք ընդհարումներ են եղել, որոնց արձագանքներն իրենց տեղն են գտել Արա Գեղեցիկի և Շամիրամի ավանդազրույցների մեջ: Այսպիսով, Շամմուրամաթ թագուհին Շամիրամ աստվածուհու երկրային նախատիպն էր:*

*6. Այստեղ Դիոդորոսը նկատի ունի Հայկական Տավրոսի լեռները:*

## ՀԱՅ-ԱՍՈՒՐԱԿԱՆ ԵՎ ՀԱՅ-ՄԱՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Ա*

*ԺԳ*

### ԱՐԵՎԵԼՑԻՆԵՐԻ ՀԵՏ ՄՂՎԱԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՈՒ ՀԱՂԹՈՒԹՅԱՆ ԵՎ ՆՅՈՒՔԱՐ ՄԱԴԵՍԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

*Եվ որովհետև մեզ հաճելի թվաց քո[1] հրամանով մեր հանձն առած նեղությունն ավելի մեծ բավականություն համարել, քան ուրիշներից (առաջարկված) ուրախություններն ու կերուխումը, ուս-տի համաձայնվեցինք կարճառոտ մեջ բերել զրույցներ Հայկյան Արամի վարած պատերազմների մասին: Նա աշխատասեր և հայրենասեր մարդ լինելով, ինչպես ցույց է տալիս նույն պատ-մագիրը[2], լավ էր համարում հայրենիքի համար մեռնել, քան տեսնել,*

*թե ինչպես օտարացեղ ազգերը ոտնակոխ են անում իր Հայրենիքի սահմանները և օտարները տիրում են իր արյունակից հարազատների վրա:*

*Այս Արամը Նինոսի[3] ասորեստանցիներին և Նինվեին տիրելուց քիչ տարիներ առաջ, չրջակա ազգերից նեղվելով՝ հավաքում է հարազատ, քաջ և աղեղնավոր մարդկանց մի բազմություն՝ մոտ հինգ բյուր մարդ, վարժ նիզակավոր չատ ուժեղ երիտասարդներ, հաջողակ ձեռքերով, սրտոտ ու հմուտ պատերազմող: Նա հանդիպում է Հայոց սահմանների մոտ գտնվող մեղացիների քաջերին, որոնց առաջնորդում էր մի ոմն Նյուքար Մադես[4], հպարտ և պատերազմասեր մի մարդ, ինչպես ցույց է տալիս նույն պատմագիրը: Դրանք մի անգամ քուչանների նման ասպատակելով սմբակներով ոտնակոխ արին Հայաստանի սահմանները, (և Մադեսը) երկու տարի իրեն ենթարկեց (Հայաստանը): Արամը հանկարծակիորեն նրա վրա հարձակվելով արևը ծագելուց առաջ՝ կոտորեց նրա բազմաթիվ ամբոխը և իրեն՝ Նյուքարին էլ, որ Մադես էր կոչվում, ձերբակալ անելով բերեց Արմավիր և այնտեղ պարսպի աչտարակի ծայրին հրամայեց պատին վարսել, երկաթե ցից մխելով ճակատի մեջ՝ ի ցույց ղնելով անցորղներին և բոլոր այնտեղ եկվորներին, իսկ նրա երկիրը մինչև Զարասպ[5] կոչված լեռը իրեն հպատակեցնելով՝ հարկատու դարձրեց մինչև Նինոսի թագավորելն Ասորեստանի և Նինվեի վրա:*

*Իսկ Նինոսը Նինվեում թագավորելով՝ մտքում պահած ուներ իր նախնիի՝ Բելի վրեժի հիչատակը. զրույցներից լսած լինելով՝ երկար տարիներ մտածում էր վրեժխնդիր լինել, դիտելով ու սպասելով նպաստավոր ժամանակի, որպեսզի քաջ Հայկի սերունդներից սերմանված ամեն մի արու ժառանգ ոչնչացնի: Բայց կասկածելով, թե այսպիսի ձեռնարկումը կարող է նրա թագավորության կորստյան պատճառ դառնալ, իր չար խորհուրդը թաքցնում է. (Արամին) հրամայում է առանց կասկածի իր իչխանությունը վարել, իրավունք է տալիս մարգարտե վարսակալ կրել և իր երկրորդը կոչվել: Բայց բավական է այսքան ասվածը, որովհետև մեր առաջիկա գործը թույլ չի տալիս երկար կանգ առնել մեր պատմության սկզբում:*

## ԺԴ

### ԱՍՈՐԵՍՏԱՆՑԻՆԵՐԻ ՀԵՏ ՄՂՎԱԾ ԿՌՎԻ ՈՒ ՀԱՂԹՈՒԹՅԱՆ ԵՎ ՊԱՅԱՊԻՍ ՔԱԱՂՅԱՅԻ, ՆԱԵՎ ԿԵՍԱՐԻԱՅԻ ԵՎ ԱՌԱՋԻՆ ՈՒ ՄՅՈՒՍ ՀԱՅՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Նույն այս Արամը արևելցիների հետ ճակատամարտը վերջացնելուց հետո նույնպիսի զորությամբ շարժվում է Ասորեստանի կողմերը, այնտեղ ևս գտնում է իր երկրի մի ուրիշ ոչնչացնող՝ Բարշամ[6] անունով, հսկաների ցեղից, չորս բյուր սպառազեն հետևակներով և հինգ հազար հեծյալներով. նա խիստ հարկերով սաստիկ նեղելով անապատ էր դարձրել իր ամբողջ շրջակայքը: Արամը պատերազմելով ընդհարվում է նրա հետ և հալածում է նրան Կորդուքի միջով ու չպրտում է Ասորեստանի դաշտը՝ չատերին կոտորելով, իսկ Բարշամը նրա զինակիցներին հանդիպելով սպանվում է: Այս Բարշամին ասորիները երկար ժամանակ աստվածացրած պաշտում էին իր բազմաթիվ քաջագործությունների պատճառով: Իսկ Ասորեստանի դաշտերի մեծ մասը Արամը գրավեց և հպատակության մեջ պահեց երկար ժամանակ:*

*Իսկ ինչ քաջագործություններ որ սա կատարեց արևմտյան կողմում Տիտանյանների[7] դեմ, մենք դեռ պետք է պատմենք: Սա դեպի արևմուտք շարժվում է առաջինի (Հայքի) վրա չորս բյուր հետևակ և երկու հազար հեծյալ զորքերով, հասնում է Կապադովկիայի կողմերը. մի տեղ, որ այժմ Կեսարիա[8] է կոչվում: Որովհետև նա արևելյան և հարավային (ազգերը) նվաճել և հանձնել էր այս երկու ցեղերին՝ արևելքը Սիսակյաններին և Ասորեստանի կողմերը Կադմոսի տան հաջորդներին. այլևս ոչ մի տեղից կասկած չուներ, ուստի երկար ժամանակ մնաց արևմուտքում: Այստեղ նրան պատերազմով հանդիպում է Տիտանյան Պայապիս Քաաղյան[9], որ բռնացել էր երկու մեծամեծ ծովերի՝ Պոնտոսի և Օվկիանոսի[10] միջև ընկած տարածությունը: (Արամը) նրան ընդհարվելով վանում և փախցնում է ասիական ծովի մի կղզի. այնտեղ երկրի վրա հսկելու համար նա թողնում է Մշակ[11] անունով մեկին իր ցեղից և մի բյուր զորք, ինքը վերադառնում է Հայաստան:*

*Բայց այդ երկրի բնակիչներին հրաման է տալիս սովորել և խոսել հայերեն. այս պատճառով հույները մինչև այսօր այդ երկպամասը կոչում են Պռոտին Արմենիան, որ թարգմանվում է Առաջին Հայք[12]: Իսկ այն դաստակերտը, որ Արամի կուսակալ Մշակը շինեց իր*

*անունով և փոքր պարիսպներով պատեց, այդ երկրի հին մարդիկ կոչում էին Մաժաք, կարծես չկարողանալով ճիշտ արտասանել. հետո նա ուրիշներից ավելի ընդարձակ շինվելով կոչվեց Կեսարիա: Միևնույն կարգով այդ տեղերից մինչև իր բուն սահմանները շատ անբնակ տեղեր բնակիչներով լցրեց, որոնք կոչվեցին Երկրորդ և Երրորդ Հայք, նաև Չորրորդ (Հայք)*[13]*: Այս է բուն և ճշմարիտ պատճառը մեր՝ արևմտյան կողմը Առաջին և Երկրորդ, այլ և Երրորդ և Չորրորդ Հայք անվանելու: Իսկ ինչ որ ոմանց կողմից այլ ձևով է կոչվում հունական կողմերում, մենք չենք ընդունում, ուրիշներն ինչպես կամենան:*

*Սա այսպես հզոր և անվանի եղավ. ուստի սրա անունով են մինչև այսօր մեր շրջակա ազգերը մեր երկիրը անվանում, ինչպես ամենքին հայտնի է: Սա ուրիշ շատ քաջագործություններ էլ է կատարել, բայց ինչքան որ ասացինք, բավական ենք համարում:*

## *ԺԵ*

### ԱՐԱՅԻ ԵՎ ՆՐԱ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ ՇԱՄԻՐԱՄԻ ԿՈՂՄԻՑ՝ ՊԱՏԵՐԱԶՄՈՎ

*Արան Նինոսի վախճանվելուց քիչ տարիներ առաջ խնամակալ դարձավ իր հայրենիքին՝ Նինոսից նույնպիսի շնորհի արժանանալով, ինչպես իր հայր Արամը: Բայց այն վավաշոտ և անառակ Շամիրամը*[14] *շատ տարիներից ի վեր նրա գեղեցկության մասին լսած լինելով, ցանկանում էր նրան տեսնել, բայց հայտնի կերպով չէր համարձակվում որևէ բան անել: Իսկ Նինոսի վախճանվելուց կամ Կրետե փախչելուց հետո, ինչպես համոզված եմ, Շամիրամը իր ախտը համարձակ պատվելով՝ Արա Գեղեցիկի մոտ պատգամավորներ է ուղարկում ընծաներով ու նվերներով և շատ աղաչանքներով ու պարգևների խոստումով խնդրում է գալ Նինվե իր մոտ կամ իրեն կին առնել ու թագավորել այն ամենի վրա, որոնց տիրում էր Նինոսը, և կամ նրա ցանկությունը կատարել ու մեծամեծ նվերներով խաղաղությամբ իր տեղը դառնալ: Երբ պատգամավորները շատ անգամ երթևեկություն կատարեցին, և Արան չհամաձայնեց, Շամիրամը սաստիկ չարանալով, պատգամավորությունը դադարելուց հետո, վերցնում է իր զորքի բազմությունը և շտապում է գնալ հասնել Հայաստան՝ Արայի վրա: Բայց որքան դեմքից կարելի էր գուշակել , շտապում էր ոչ այնքան նրան սպանելու կամ հալածելու, որքան*

*նվաճելու կամ իր ձեռքը գցելու, որպեսզի իր կամքը կատարի: Որովհետև կատաղի կրքի պատճառով տոփանքով սիրահարված էր նրա մասին եղած զրույցներին, ինչպես տեսնելիս լիներ: Շտապելով գալիս հասնում է Արայի դաշտը, որ նրա անունով կոչվել է Այրարատ: Ճակատամարտը պատրաստելիս նա իր զորապետներին պատվել է տալիս, եթե դեպքը բերի, պետք է ջանալ կենդանի պահել Արային: Կռվի ժամանակ Արայի զորքը ջարդվում է, Արան էլ ընկնում է պատերազմի մեջ Շամիրամի կտրիճներից: Հաղթությունից հետո տիկինը դիակապուտներ է ուղարկում ճակատամարտի տեղը՝ ընկած դիակների մեջ փնտրելու իր ցանկալիին և տարփածուին: Արային մեռած գտնում են քաջամարտիկների մեջ: Հրամայում է նրան հանել դնել ապարանքի վերնատանը*[15]*:*

*Իսկ երբ հայոց զորքը պատրաստվում էր նորից պատերազմել Շամիրամ տիկնոջ հետ, Արայի մահվան վրեժն առնելու համար,- (Շամիրամն) ասում է. «Ես իմ աստվածներին հրամայեցի նրա վերքերը լիզել, և նա կկենդանանա»: Միևնույն ժամանակ նա հույս ուներ իր կախարդական դյութանքով Արային կենդանացնել՝ տոփական ցանկությունից ցնորված: Բայց երբ նրա դիակն սկսեց նեխվել, հրամայեց գցել մի մեծ վիհի մեջ ու ծածկել: Իր սիրականներից մեկին ծածուկ զարդարելով՝ նրա մասին այսպիսի լուր է տարածում. «Աստվածներն Արային լիզելով ու կենդանացնելով մեր փափագն ու ցանկությունը կատարեցին, ուստի այսուհետև նրանք ավելի ևս արժանի են մեզանից պաշտվելու և փառավորվելու իբրև ուրախացնողներ և կամակատարներ»: Նաև մի ինչ-որ արձան է կանգնեցնում աստվածների անունով և մեծամեծ զոհերով պատվում է նրան՝ ցույց տալով, իբր թե աստվածների այս զորությունը կենդանացրեց Արային: Եվ նրա մասին այսպես լուրեր տարածելով մեր Հայոց երկրում և բոլորին համոզելով՝ խռովությունը խաղաղեցնում է:*

*Արայի մասին կարճառոտ այսքանն էլ բավական է հիշատակել: Սա տարիներ ապրելով սերեց Կարդոսին:*

## *ԺԶ*

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՐԱՅԻ ՄԱՀԻՑ ՀԵՏՈ ՇԱՄԻՐԱՄԸ ՇԻՆՈՒՄ Է ՔԱՂԱՔԸ, ԳԵՏԻ ԱՄԲԱՐՏԱԿԸ ԵՎ ԻՐ ՏՈՒՆԸ

*Այսպիսի հաջող գործերից հետո, Շամիրամը կարճ ժամանակով մնում է այն դաշտում, որ Արայի անունով կոչվում է Այրարատ: Նա բարձրանում է երկրի հարավակողմն ընկած լեռնային վայրերը,*

*որովհետև ամառային եղանակ էր, կամենում էր հովիտներում և ծաղկավետ դաշտերում զբոսնել: Եվ տեսնելով երկրի գեղեցկությունը, օդի մաքրությունը, բխող մաքուր աղբյուրները, կարկաչահոս ու բարեգնաց գետերը՝ նա ասում է. «Մենք պետք է այսպիսի բարեխառն կլիմայում, մաքուր ջրերով երկրում մեզ համար քաղաք և բնակության արքունիք շինենք, որպեսզի տարվա չրջանի մի չորրորդ մասը, այսինքն՝ ամառային եղանակը, ամեն տեսակ վայելչությամբ անցկացնենք Հայաստանում, իսկ մյուս երեք մասը, օդի զով ժամանակը, կյանք վայելենք Նինվեում»:*

*Շատ տեղերով անցնելով՝ գալիս հասնում է աղի ծովակի*[16] *եզերքը արևելյան կողմից: Տեսնում է ծովի ափին մի երկայնաձև բլուր, որ երկայնակի ձգվում էր դեպի արևմուտք՝ հյուսիսային կողմում մի փոքր թեքությամբ, իսկ հարավային կողմից ուղղահայաց դեպի երկինք բարձրացած մի կանգուն ու անթեք քարաժայռ կար: Սրանից դեպի հարավ հեռուն տարածվում էր մի դաշտանման երկայնաձև հովիտ, որ լեռան արևելյան կողմից իջնում էր ծովի ափը, ընդարձակ և գեղեցիկ ձորի ձևով. նրա միջով հոսում էին լեռներից իջնող, ծործորներից ու հովիտներից քամվող քաղցրահամ ջրեր, որոնք լեռների ստորոտների մոտ միավորվելով՝ ծավալվում, գեղեցիկ գետեր էին կազմում: Հովտաձև ձորակի մեջ ոչ սակավ շեններ կային՝ ջրերի աջ ու ձախ կողմերում զետեղված: Այս հաճելի բլուրից դեպի արևելք կար մի չատ փոքր լեռ*[17]*:*

*Այս տեղի վրա աչք դնելով՝ այրասիրտ և վավաչոտ Շամիրամը հրամայում է անմիջապես Ասորեստանից և իր իշխանության մյուս տեղերից փափագած տեղը բերել չորս բյուր և երկու հազար սևագործ բանվորներ, վեց հազար իր ընտրած փայտագործ, քարագործ, պղնձագործ և երկաթագործ արհեստավորներից, որոնք ըստ ամենայնի կատարյալ լինեն իրենց գործի մեջ: Եվ գործը հրամանի համապատասխան կատարվում է. անմիջապես բերվեցին բազմաթիվ սևագործ բանվորներ և բազմարվեստ հմուտ վարպետներ: Եվ հրամայում է՝ նախ գետի ամբարտակը շինել ապառաժ խոշոր քարերով, կրի և ավազի չաղախով, չատ լայն և բարձր, որ մինչև այժմ, ինչպես ասում են, հաստատ մնում է: Գետի այս ամբարտակի ճեղքվածքներում այդտեղի մարդիկ, ինչպես լսում եմ, փախչում ամրանում են ասպատակությունների և գաղթերի ժամանակ, որպես թե ամրանալիս լինեին ապառաժ լեռների գագաթներին: Եվ եթե մեկը կամենա փորձել, չի կարողանա ամբարտակի շինվածքից պոկել թեկուզ պարսատիկի մի փոքր քար, որչափ էլ աշխատի: Եվ երբ մարդ*

*նայի քարերի շուրջն եղած կրի ծեփին, նրան այնպես կթվա, թե ճարպ է թափված այնտեղ։ Այսպես երկար ասպարեզներով ամբարտակն անցկացնելով՝ հասցնում է քաղաքի համար որոշված տեղը։*

*Այստեղ հրամայում է բազմությունը շատ խմբերի բաժանել, և ամեն մի խմբի վրա ղեկավար նշանակել վարպետներից ընտիրներին։ Եվ այսպես խիստ լարված աշխատանքի մեջ պահելով՝ քիչ տարիներից հետո գլուխ է բերում հրաշալի շինվածքը՝ շատ ամուր պարիսպներով ու պղնձակերտ դռներով։ Քաղաքի[18] մեջ շինում է նաև բազմաթիվ ընտիր կրկնահարկ և եռահարկ ապարանքներ, զարդարված տեսակ-տեսակ գույնզգույն քարերով, և ամեն մեկում պատուհաններ ըստ հարմարության։ Քաղաքը մասերի է բաժանում գեղեցկագույն և ընդարձակ փողոցներով։ Շինում է նաև չքնաղ և զարմանալու արժանի բաղնիքներ՝ համապատասխան քաղաքի դիրքին և պետքերին։ Գետի մի մասը քաղաքի մեջ բաշխելով՝ անց է կացնում ամեն տեսակ կարիքների և բուրաստանների ու ծաղկոցների ոռոգման համար. իսկ մյուս մասը (անց է կացնում) ծովակի աջ և ձախ ափերով՝ քաղաքի և բոլոր շրջակայքի ոռոգման համար։ Քաղաքի ամբողջ արևելյան, հյուսիսային և հարավային կողմերը զարդարում է դաստակերտներով, վարսագեղ սաղարթախիտ ծառերով՝ զանազանակերպ պտուղներով, և այնտեղ տնկում է բազմաթիվ առատաբեր և գինեբեր այգիներ։ Պարսպած քաղաքն ամեն կերպ հոյակապ ու հռչակավոր է դարձնում և մեջը բնակեցնում է մարդկանց անթիվ բազմություն։*

*Իսկ քաղաքի (վերին) ծայրը և այնտեղի շինվածքները մարդկանց շատերին անհասանալի են մնում, և պատմելու հնարավորություն չկա։ Այստեղ գագաթի շուրջը պարիսպ քաշելով՝ ներսը շինում է դժվար մտնելու և դժվար դուրս գալու ինչ-որ ծածուկ և ահռելի արքայանիստ շինվածքներ։ Դրանց շինության որպիսությունը մենք ոչ ոքից ճշտությամբ չենք լսել, ուստի հարմար չենք դատում մեր պատմության մեջ հյուսել, այսքան կասենք, թե, ինչպես լսել ենք, սրանք թագավորական բոլոր գործերի մեջ առաջին և վեհագույն են համարվում։*

*Իսկ քարաժայռի արեգակը դարձած կողմը, որտեղ այժմ մարդ ոչ մի գիծ չի կարող երկաթով գծել, այսպիսի կարծր քարի մեջ զանազան սենյակներ, ննջարաններ, գանձարաններ և երկար վիհեր, հայտնի չէ ի՛նչ բանի համար, հրաշակերտեց։ Իսկ քարաժայռի ամբողջ երեսը հարթելով, ինչպես գրչով հարթում են մեղրամոմը, վրան շատ գրեր գրել տվեց, որոնց տեսքը միայն բոլորին զար-*

*մացնում է*[19]*: Եվ ոչ միայն այստեղ, այլև Հայոց աշխարհում շատ տեղերում արձաններ կանգնեցրեց և նույն գրերով իր մասին ինչ-որ հիշատակ հրամայեց գրել, և շատ տեղերում նույն գրով, սահմաններ էր հաստատում:*

*Ահա ասացինք ինչ գործեր որ Շամիրամը կատարել է Հայաստանում:*

## *Ի*

## ԱՐԱՅԱՆ ԱՐԱՅԻ ՄԱՍԻՆ, ԵՎ ՈՐ ՍՐԱ ՈՐԴԻՆ ԷՐ ՍՈՍԱՆՎԵՐ ԱՆՈՒՇԱՎԱՆԸ

*Իսկ Շամիրամը դեռ իր կենդանության ժամանակ Արայի որդուն, որ ծնված էր նրա սիրելի կնոջից, Նվարդից և տասներկու տարեկան երեխա էր մնացել Արայի մահվան ժամանակ, դեպի Արա Գեղեցիկը տածած սիրո պատճառով նրա անունով կոչում է Արա և նշանակում է մեր երկրի գլխավոր՝ սրտանց նրան վստահելով. և ասում են, թե նա պատերազմում Շամիրամի հետ մեռավ:*

*Բայց (Մար Աբասը) պատմությունը շարունակում է այսպես. Արայան Արան պատերազմի մեջ մեռնում է Շամիրամի հետ՝ թողնելով արու զավակ՝ շատ գործունյա հանճարախոս Անուշավան Սոսանվերին, որովհետև նա պաշտամունքի համաձայն նվիրված էր Արմենակի՝ Արմավիրում գտնվող սոսի ծառերին, որոնց տերևների սոսափյունից՝ նայելով քամու ուժին և ուղղությանը՝ մեր Հայոց աշխարհում սովորեցին գուշակություններ անել և այն էլ երկար ժամանակ*[20]*:*

*Այս Անուշավանը բավական ժամանակ արհամարհանք կրելով Զամեսեսից*[21]*, տառապում է արքունի դռանը. հետո բարեկամներից օգնություն գտնելով ձեռք է բերում մեր երկրի մի մասը՝ կառավարելու համար իբրև հարկատու, վերջը նաև ամբողջ երկիրը:*

*Բայց չափազանց շատ կլիներ, եթե մենք այս գլխում վերը հիշված մարդկանց բոլոր գործերն ու պատմությունները նկարագրեինք, ինչպես վայել է:*

*1. Պատմահայրը դիմում է իր մեկենաս, Հայոց իշխան Սահակ ասպետ Բագրատունուն:*

*2. Այսինքն՝ Մար Աբասը:*

*3.* ***Նինոս*** *- տե՛ս 140-րդ էջ, ծան. № 4:*

*4. Առասպելական անձնավորություն:*

*5. **Զարասպ լեռ** – Զագրոսյան լեռների գագաթներից մեկն է, պատմական Հայաստանի ամենահարավային կետը:*

*6. **Բարշամ** (Բարշամին) – բառացիորեն՝ «երկնքի որդի», Ասորեստանի առասպելական նախնին, աստվածություն, որը համապատասխանում էր հայկական Միհրին և հունական Հեփեստոսին:*

*7. Առասպելական հսկաներ: Հունական առասպելում Զևսը ևս մարտնչում է Տիտանյանների դեմ:*

*8. **Կեսարիա Կապադովկիոյ** (Մաժաք) – Կապադովկիայի մայրաքաղաքն էր:*

*9. Առասպելական անձնավորություն: Ուսումնասիրողները ենթադրում են, որ Պայապիս Քաաղյան հունական առասպելի Տյուփոն հրեշն է, որին սպանեց Զևսը:*

*10. Նկատի ունի Միջերկրական ծով:*

*11. **Մշակ** – այս անվան մեջ պահպանվել է փոյուզ-միխացիների Մուշկ ցեղանունը:*

*12. **«Պոտուն Արմենիան»** – Առաջին Հայքն է:*

*13. Երրորդ և Չորրորդ Հայքերը, որպես վարչական միավորներ, կազմավորվել են 536 թ.՝ Հուստինիանոս կայսեր ռեֆորմով: Հետևաբար այս երկրամասերի առկայությունը Խորենացու մոտ պետք է համարել ընդմիջարկություն՝ հետագա դարերում ավելացված:*

*14. Շամիրամի մասին տե՛ս 141-րդ էջ, ծան. № 5:*

*15. Ինչպես հայտնի է, Արան հայկական դիցարանում մեռնող և հարություն առնող աստվածությունն էր և առասպելը դա չեչտելու միտումով է, որ փորձում է Արային հարություն տալ արալեզ կոչված ոգիների միջոցով: Ըստ ավանդության, արալեզները լիզում են կռվի դաշտում ընկած հերոսներին և հարություն տալիս նրանց:*

*16. Այսինքն՝ Վանա լճի:*

*17. Խոսքը Վարագա լեռան մասին է:*

*18. Ըստ առասպելի, Վան քաղաքի հիմնադրումը կապվում է Շամիրամի անվան հետ:*

*19. Խորենացին նկատի ունի ուրարտական սեպագիր արձանագրությունները, որոնք հայկական ավանդությունը վերագրում էր Շամիրամին:*

*20. **Անուշավան Սոսանվեր** – բնության պաշտամունքի, հատկապես բուսականության հետ աղերսվող աստվածության ներկայացուցիչ:*

*21. **Զամեսես** – ըստ Խորենացու, նույն Նինուասն է՝ Շամիրամի որդին, որը սպանելով իր մորը՝ դառնում է Ասորեստանի թագավոր:*

## ՎԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՍԵՊԱԳԻՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ԵՎ ՀԱՐԵՎԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Ք. ա. XIII դ. սկսած Ասորեստանի կազմակերպած պարբերական կողոպտիչ արշավանքները արագացնում են Հայկական լեռնաշխարհի իշխանությունների միավորումը և միասնական պետության ստեղծումը, որը Ք. ա. IX դ. կեսերից սկսած աստիճանաբար հզորանալով, ոչ միայն հակահարված է տալիս Ասորեստանի ռազմական էքսպանսիային, այլև հենվելով կենտրոնացված պետության վրա, հակահարձակման է անցնում և Առաջավոր Ասիայում որոշ ժամանակ դառնում հզորագույն ռազմաքաղաքական ուժ: Այդ պետությունը ասուրա-բաբելական սկզբնաղբյուրներում կոչվում է Ուրարտու, Վանի թագավորության սեպագիր արձանագրություններում՝ Բիայնիլի և Նաիրի (տեղական ասուրագիր բնագրերում), իսկ Աստվածաշնչում՝ Արարատ/դի թագավորություն:***

***Վանի թագավորության սեպագիր տարեգրություններն ու արձանագրությունները, ասորեստանյան, խեթական, պարսկական և այլ աղբյուրների հետ միասին լույս են սփռում Հայաստանի հնագույն շրջանի պատմության և հարակից հարցերի վրա:***

***Վանի թագավորության սեպագիր աղբյուրների ներկայացվող թարգմանությունները կատարված են բնագրերից, որի ընթացքում նկատի են առնված նախկին թարգմանությունները, հայագիտական բնույթի աշխատություններ:***

***Աշխատանքի ընթացքում օգտագործված մասնագիտական գրականության կարևորագույն մասը տրվում է ստորև, որի հապավված ձևերը նշված են ինչպես ցանկի տողասկզբներում, այնպես էլ թարգմանված արձանագրությունների նախաբաններում՝ որպես սկզբնաղբյուրների հղումներ:***


*1. MLV–**F. E. Schulz,** Mémoires sur le lac de Van et ses environs (“Journal Asiatiquen”, IX, Paris, 1840).*

*2. КНЗ - **М. В. Никольский,** Клинообразные надписи Закавказья (“Материалы по археологии Кавказа”, V, Москва, 1896).*

*3. АЭВ - **Н. Я. Марр, И. А. Орбели,** Археологическая зкспедиция 1916 г. в Ван, Петроград, 1922.*

*4. CICh - **C. F. Lehmann-Haupt,** Corpus Inscriptionum Chaldicarum, I-II, Berlin und Leipzig, 1928-1935.*

*5. УКН - **Г. А. Меликишвили.** Урартские клинообразные надписи, Москва,*

*1960 (առաջին հրատարակությունը.-"Вестник древней истории", 1953, №№ 2, 3, 4; 1954, № 1. լրացումները. – 1971, №№ 3, 4).*

*6. HChI – **F. W. König,** Handbuch der chaldischen Inschriften, Graz, 1955–1957.*

*7. УПД - **И. М. Дьяконов**, Урартские письма и документы, Москва-Ленин - град, 1963.*

*8. НУНКБ - **Н. В. Арут юнян,** Новые урартские надписи Кармир-Блура, Ереван, 1966.*

*9. КУКН - **Н. В. Арут юнян,** Корпус урартских клинообразных надписей, Ереван, 2001.*

***Սույն բաժնում բերված Վանի թագավորության սեպագիր արձանագրությունների՝ բնագրից կատարած թարգմանությունները կատարել է հանգուցյալ արևելագետ Հ. Հ. Կարագյոզյանը (պատրաստված նախորդ քրեստոմատիայի համար): Կատարվել են որոշ խմբագրումներ՝ հաշվի առնելով գիտության այսօրվա տվյալները, հատկապես, տառադարձումների խնդրում:***

## 1.

## *ՏՈՒՇՊԱ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ՀԻՄՆԱԴՐՈՒՄԸ*

***ՎԱՆ. Սարդուրի I-ի՝ ասուրերեն լեզվով գրված տասը արձանագրություններից մեկը, որոնք բոլորն էլ գտնվել են Վանի քարաժայռի ստորոտում կառուցված պարսպի մեջ:***

ClCh, I; УКН, № 1; HChI, № 1a; КУКН, N 1-6.

*Սարդուրիի[1] արձանագրությունը, որդու Լութիպրիի[2], մեծ արքայի, հզոր արքայի, տիեզերքի արքայի, Նաիրիի արքայի, արքայի, որին հավասարը չկա, զարմանահրաշ հովվի, (որ) չի վախենում կռվից, արքայի, որ ենթարկում է անհնազանդներին: Սարդուրին՝ որդին Լութիպրիի, արքան (է) արքաների, որը բոլոր արքաներից հարկ վերցրեց: Սարդուրին՝ որդին Լութիպրիի, ասում է, այսպես. – Ես քարերն այս Ալնիունու[3] (քաղաքի) միջից բերեցի, ես պարիսպն այս կառուցեցի:*

*1. **Սարդուրի I** (840–825) – Ուրարտուի արքա: Ք. ա. մոտավորապես 840 թ. կառուցեց Տուշպա (հետագայում՝ Տոսպ, Վան) մայրաքաղաքը՝ Վանա լճի արևելյան ափին:*



***Տուշպա (Վան) մայրաքաղաքի հիմնադրման արձանագրությունը***

*2. **Լութիպրի** – Սարդուրի I-ի հայրը: Կարծիք է հայտնվել, որ Լութիպրին միևնույն Արամե (860–840) արքան է, որը քիչ հավանական է:*

*3. **Ալնիունու** – քաղաք, հավանաբար, Տուշպայի մոտակայքում:*

**2.**

*ԽԱԼԴՅԱՆ ԴԱՐՊԱՍՆԵՐԻ ԵՎ ՏԱՃԱՐԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ*

***ՎԱՆ. Արձանագրված է Վանի քարաժայռի վրա, միջնաբերդի արևելյան դարպասների մոտ: Արձանագրության տեքստը կրկնվում է երեք անգամ:***

CICh, II; УКН, № 18; HChI, № 12; КУКН, N 20.

*Խալդյան զորությամբ Իշպուինին[1] ասում է՝ Սարդուրորդին.– Ես, Մինուա[2] Իշպուինորդին (և) Ինուշպուա[3] Մինուայորդին Խալդական տաճարը կառուցեցինք, Խալդյան դարպասները [...] հոյակապ առջևը Տուշպա[4] (քաղաքի) կառուցեցինք, զոհաբերեցինք եզներ (և) ոչխարներ: Խալդիի կողմից, Խալդյան դարպասների կողմից թող լինի*

*ողջության (և) մեծության Իշպուինի Սարդուրորդուն, Մինուա Իշպուինորդուն (և) Ինուշպուա Մինուայորդունն:*

*1. **Իշպուինի** (825-810) - Սարդուրի I-ի որդին և հաջորդը, Ուրարտուի նշանավոր արքաներից, որի ժամանակ երկիրը տնտեսապես սկսեց հզորանալ: Մեզ հասած հնագույն ուրարտական սեպագիր արձանագրությունները վերաբերում են Իշպուինիի ժամանակին:*

*2. **Մինուա** (810-786) - Իշպուինիի որդին և հաջորդը: Մինուան Ուրարտուի առավել հզոր արքաներից մեկն էր, որի ժամանակ երկիրը տնտեսապես և ռազմական տեսակետից այնքան հզորացավ, որ Ուրարտուն արդեն կարող էր ձեռնարկել Հայկական լեռնաշխարհը մեկ միասնական պետության մեջ միավորելու գործին:*

*3. **Ինուշպուա** - Մինուայի որդին, որը համարվել է գահաժառանգ: Սակայն, մեզ անհայտ պատճառներով (թերևս նրա մահվան հետևանքով) մենք Ուրարտուի գահին նրա փոխարեն տեսնում ենք Մինուայի մեկ այլ, հավանաբար, երկրորդ որդուն՝ Արգիշտի I-ին (786-764):*

*4. **Տուշպա** - տե՛ս № 1, ծան. 1:*

## 3.

## *ԶՈՀԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆՈՒՄԸ ԽԱԼԴԻԻ ԵՎ ԱՐՈՒԲԱՆԻԻ ՀԱՄԱՐ*

***ԱՇՈՏԱԿԵՐՏ. Արձանագրությունը փորագրված է Վանից հարավ-արևելք, Կոտոր գետի ակունքների մոտ, ժայռի մեջ պատրաստված որմնախորշի վերին մասում: Կրկնվում է երկու անգամ:***
HChI, VI; УКН, № 25; HChI, № 8; КУКН, N 36.

*Խալդի տիրոջն իր Իշպուինի Սարդուրորդին (և) Մինուա Իշպուինորդին Խալդյան տաճարը կառուցեցին: Խալդյան զորությամբ Իշպուինի Սարդուրորդին, (որ) արքա (է) հզոր, արքա մեծ, արքա Բիաինիլի[1] (երկրի), իշխանը Տուշպա քաղաքի, հաստատեց կարգ.- Յուրաքանչյուր(?) ամսում (?) (մեկ) ուլ Խալդիին թող ողջակիզեն, (մեկ) եզ Խալդիին թող զոհաբերեն, (մեկ) կով՝ Արուբանիին[2], (մեկ) ոչխար՝ Խալդյան դարպասներին, (մեկ) ոչխար՝ Խալդյան զենքերին:*

*1. **Բիաինիլի** - Վանի թագավորության անվանումը տեղական սեպագիր արձանագրություններում: Սկզբնապես եղել է Վանա լճի հարավարևելյան ափին տարածված շրջանը:*

*2.* ***Արուբանի*** *(նույն՝ Վարուբանի, գուցե Յարուբանի) – ուրարտական դիցարանի գերագույն աստվածուհին, Խալդի աստծու կինը: Ասորեստանյան աղբյուրներում հանդիպում է Բագմաշտու (Բագբարտու) անվամբ: Պաշտամունքի գլխավոր կենտրոնն էր Արդինի (Մուծածիր) քաղաքը:*

## 4.

## *ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԴԻՑԱՐԱՆԻ ԱՍՏՎԱԾՆԵՐԻՆ ՍԱՀՄԱՆՎԱԾ ԶՈՀԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄԸ*

***ՎԱՆ****.* ***Արձանագրությունը փորագրված է ժայռի արհեստական որմնախորշի մեջ, Վանի հարավարևմտյան կողմում: Տեքստը կրկնված է երկու անգամ:***

CICh, VII–X; УКН, № 27; HChI, № 10; КУКН, N 38.

*Խալդի տիրոջն իր Իշպուինի Սարդուրորդին (և) Մինուա Իշպուինորդին այս դարպասները սարքեցին: (Իշպուինին) սահմանեց կարգ.– Արևի ամսին[1] տոնախմբություն(?) կատարել(?) Խալդիին, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին բոլոր: Վեց ու Խալդիին Թող ողջակիզեն: Տասնյոթ եզ (և) երեսունչորս ոչխար Խալդիին թող զոհաբերվի, Թեյշեբային՝ վեց եզ (և) տասներկու ոչխար, Շիվինիին՝ չորս եզ (և) ութ ոչխար, Խուտուինիին՝ երկու եզ (և) չորս ոչխար, Տուրանին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Ուային՝ երկու եզ (և) չորս ոչխար, Նալաինիին՝ երկու եզ (և) չորս ոչխար, Շեբեթուին՝ երկու եզ (և) չորս ոչխար, Արսիմելային՝ երկու եզ (և) չորս ոչխար, Անապշային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Դեղուաինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Մելարդիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան զենքերին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Աթբինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Կուերային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Ելիպրեին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Թարրաինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Ադարութային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Իրմուշինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, աստծուն[2], որը հոգիներ(?) (է) տեղափոխում(?)՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Ալապթուշինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Ունինային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Այրաինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Զուզումարուին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խարային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Արածային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Զիուկունեին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Ուրային՝ (մեկ) եզ*



*Մհերի դուռ (Ագռավաքար)*

*(և) երկու ոչխար, Արծիբիդինիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Արնեին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան «ինիրիաշի»-ին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան մեծությանը՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան կատարելությանը(?)՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան զորքին՝ երկու եզ (և) չորս ոչխար, Թեյշեբայան զորքին՝ երկու եզ (և) չորս ոչխար, Արտուարասեններին՝ երկու եզ (և) երեսունչորս ոչխար, Արդինի (քաղաքի) աստծուն՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Կումենու (քաղաքի) աստծուն՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Տուշպա (քաղաքի) աստծուն՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, աստվածներին՝ Խալդյան քաղաքի՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, աստվածներին Արծունիունի (քաղաքի)՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան ելքին(?)՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Շուբային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան դարպասներին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Թեյշեբայան դարպասներին Էրիդիա (քաղաքի)՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Շիվինյան դարպասներին Վիչինի (քաղաքի)՝ (մեկ) եզ*

(և) երկու ոչխար, Էլիպայային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան կերպարանքին(?)՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Խալդյան զորությանը (մեկ) եզ (և) երկու ոչխար, աստվածներին Խալդյան տաճարի՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Թալապուրային՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, Կիլիբանիին՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, լեռնցիների(?) աստծուն՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, դաշտեցիների աստծուն՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, ծովայինների աստծուն՝ (մեկ) եզ (և) երկու ոչխար, աստվածներին զոհաբերության՝ երկու եզ (և) տասնչորս ոչխար, աստվածներին [...]րեններին՝ երկու եզ (և) տասնչորս ոչխար, աստվածներին բոլոր՝ չորս եզ (և) տասնյոթ ոչխար, Խալդյան տավարին՝ չորս ոչխար, Ուայան դարպասներին Նիչե (քաղաքի)՝ երկու ոչխար, լեռներին՝ տաս ոչխար[3]:

Արուբանիին՝ (մեկ) կով (և) (մեկ) ոչխար, Բաբային՝[4] (մեկ) կով (և) (մեկ) ոչխար, Տուշպուեային՝[5] (մեկ) կով (և) (մեկ) ոչխար, Աուին՝ (մեկ) կով, Այային՝ (մեկ) կով, Սարդիին՝ (մեկ) կով, Ծինույարդեին՝ երկու ոչխար, Իպխարիին՝ երկու ոչխար, Բարծիային՝ (մեկ) ոչխար, Սիլիային՝ (մեկ) ոչխար, Արյային՝ (մեկ) ոչխար, Ադիային՝ (մեկ) ոչխար, Վիային՝ (մեկ) ոչխար, Այայաններին՝ չորս ոչխար, Արդիին՝ երկու ոչխար, Ինուայաններին՝ տասնյոթ ոչխար[6]:

Խալդիի կողմից, աստվածների բոլորի կողմից թող լինի ողջություն՝ Իշպուինի Սարդուրորդուն (և) Մինուա Իշպուինորդուն: Իշպուինի Սարդուրորդին ասում է.– Մինուա Իշպուինորդին Խալդիի սպասավորներով(?) շրջապատված(?), նաև՝ աստվածներով բոլոր, երեք եզ (և) երեսուն ոչխար ոչ մեկին [...] չթողեց(?), (...):

Իշպուինի Սարդուրորդին (և) Մինուա Իշպուինորդին խաղողուտ նոր հիմնեց(ին), Խալդիին նույնիսկ անտառ նոր հիմնեց(ին): Ոչ (մի) բան այնտեղ կառուցված (չէր): Իշպուինի Սարդուրորդին (և) Մինուա Իշպուինորդին ապարանք(?) նոր հիմնեց(ին), հաստատեց(ին) կարգ.– Երբ ծառերը (...), Խալդիին երեք ոչխար թող զոհաբերեն, երեք ոչխար՝ աստվածներին բոլոր. երբ խաղողը (...), Խալդիին երեք ոչխար թող զոհաբերեն, երեք ոչխար՝ աստվածներին բոլոր. երբ խաղողը քամեն(?)՝ Խալդիին երեք ոչխար թող զոհաբերեն, երեք ոչխար՝ աստվածներին բոլոր. գինի թող դնեն(?): (Հակառակ դեպքում) թող իր աչքին(?) (ու) դեմքին(?) կախարդանք լինի:

1. **«Արևի ամիս»** – Վանի թագավորության օրացույցի ամիսներից մեկը, որին, գուցե, համապատասխանում է հետագայի հայկական Արեգի ամիսը: Մյուս ամիսներից հայտնի է ևս մեկը, որը կոչվում է Քամա: Այլ ամսանուններ մեզ

*հայտնի չեն (տե՛ս նաև № 14, ծան. 19)։*

*2.* ***«Աստծուն, որը հոգիներ(?) (է) տեղափոխում(?)»*** *- Գ. Ա. Ղափանցյանի համոզիչ բացատրության համաձայն՝ այս աստծու անունը տաբուի պատճառով չի հիշատակվում, քանի որ այն հանդիսանում է ուրարտական դիցարանի անդրշիրիմյան աստվածը։*

*3. Այստեղ վերջանում է ուրարտական դիցարանի արական աստվածների թվարկումը, որոնք ընդամենը երեսունհինգն են։*

*4.* ***Բաբա*** *- ուրարտական դիցարանի երկրորդ աստվածուհին, Թեյշեբա աստծո կինը (նախկինում ընթերցվում էր «Խուբա» - կազմ.)։*

*5.* ***Տուշպուեա*** *- ուրարտական դիցարանի երրորդ աստվածուհին, Շիվինի աստծու կինը։*

*6. Ուրարտական դիցարանի առաջին իգական եռյակին հաջորդում են ևս տասնմեկ աստվածուհիներ։ Դժվար է ասել, թե դրանցից յուրաքանչյուրը ո՞ր աստծու կինն է, քանի որ արական աստվածների եռյակին հաջորդում են ևս երեսուներկու աստվածություն, իսկ աստվածուհիների եռյակին՝ միայն տասնմեկ իգական աստվածություն։ Այյայան կոչվող սրբությունները, հավանաբար, չորսն են և կապ ունեն Այա աստվածուհու հետ, իսկ Ինուայան սրբությունները, հավանաբար, տասնյոթն են, սակայն ո՞ր աստծու կամ աստվածուհու հետ են կապվում, դժվար է ասել։*

## 5.

### *ՄԻՆՈՒԱՅԻ ՋՐԱՆՑՔԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ*

***ԿԱՏԵՊԱՆՑ. Մինուայի ջրանցքի վրա գտնվող բազմաթիվ արձանագրություններից մեկը, որ փորագրված է ժայռին։ Ջրանցքը, որ ունի մոտ 70 կմ երկարություն, գործում է նաև այժմ։ Ջրանցքն ունի բարդ հիդրոտեխնիկական կառուցվածք, Այն անցկացված է լեռների լանջերին փորված և տեղ-տեղ քարե պատնեշներով ամրացված հունով, ինչպես նաև ձորերի վրա կառուցված հատուկ կամուրջներով։***

MLV, XIX; CICh, XXXIV; УКН, № 43; HChI, № 29a; КУКН, № 60.

***Խալդյան զորությամբ Մինուա Իշպուինորդին այս ջրանցքը անցկացրեց։ «Մինուայի ջրանցք» (է) անունը։ Խալդյան մեծությամբ Մինուան արքա (է) հզոր, արքա մեծ, արքա Բիայնիլի (երկրի), իշխանը Տուշպա քաղաքի։ Մինուան ասում է. (...)։*** *(Հաջորդում է անեծքի բանաձևը)։*

## 6.

### *ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԴԻՑԱՐԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ԱՍՏԾՈՒՆ ԵՎ ԱՍՏՎԱԾՈՒՀՈՒՆ ԿԱՏԱՐՎՈՂ ԶՈՀԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

***ԳՑՈՒՔՋԱԿ*. *Փորագրված է Վանա լճից արևելք կանգնեցրած քարակոթողի վրա։***

CICh, XIX; УКН, № 65; HChI, № 41; **КУКН, N 82.**

*Խալդի տիրոջն իր այս արձանագրությունը Մինուա Իշպուինորդին գրեց։ Երբ Խալդյան դարպասները կառուցեց (և) ամրոց կառուցեց Հոյակապ, Հաստատեց «Խալդիի քաղաք» անունը։ Հիմնեց այս խաղողուտը, Հիմնեց անտառ։ «Մինուայի խաղողուտ» (է) անունը։ Խալդյան մեծությամբ Մինուա Իշպուինորդին արքա (է) Հզոր, արքա մեծ, արքա Բիաինիլի (երկրի), իշխանը Տուշպա քաղաքի։ Մինուան ասում է. – Երբ խաղողուտը (...), (մեկ) եզ (և) երեք ոչխար Խալդիին թող զոհաբերեն, (...) թող ձոնեն թե՛ Խալդյան դարպասներում, թե՛ այս արձանագրության առջև։ Երբ գինին նոր (...), (մի) սափոր(?) Խալդիին թող ձոնեն՝ Խալդյան դարպասներում, (մի) սափոր(?)՝ Արուբանիին, (մի) սափոր(?) Խալդիին՝ այս արձանագրության առջև։*

## 7.

### *ԲՈՒԺԱՐԱՆԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԵՎ ԱՅՆՏԵՂ ԿԱՏԱՐՎՈՂ ԶՈՀԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

***ԿՈՂԲԱՆՑ. Արձանագրությունը գտնված է Վանից արևելք։ Այն փորագրված է շինարարական քարի չորս նիստերին։ Բերվում է աննշան կրճատումներով։***

MLV, XXXII–XXXV; CICh, XX; УКН, № 89; HChI, № 56; **КУКН, № 115.**

*Խալդյան զորությամբ Մինուա Իշպուինորդին այս բուժարանը(?)*[1] *սարքեց։ «Մինուայի բուժարան(?)» (է) անունը։ Խալդին իմ զորեղ (է), աստվածների մեջ զորեղ (է)։ Թող լինի այնտեղ Մինուային իրավունք.– Երբ Խալդյան դարպասներում(?) անասուն(?) զոհաբերվի, երբ (...) [...], ամբողջ (...)։ Մինուային Խալդին բուժեց(?)*[1]*։*

*Աստվածները (...) այնտեղից արքաներին պետք է բուժեն(?)։ Հետո(?) ամբողջությամբ Մինուայան բուժարանը(?) թող սրբեն(?)։ Ով ոչնչացնի, ով ջնջի(?), ով տեղից շարժի(?), ով ջարդի, թող ոչնչացնի՛ Խալդին նրան արևի տակից։*

*1. Հիշյալ «բուժարան(?)» և «բուժել(?)» բառերի թարգմանությունը պատկանում է Ի. Մ. Դյակոնովին։*

## 8.

### *ՁԻՈՒ ՑԱՏԿԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՌԵԿՈՐԴ*

***ՍՂԳԱ.** **Արձանագրությունը հայտնաբերվել է գյուղական եկեղեցու պատի շարվածքում, Վանի քարաժայռերի և Վարագա լեռների միջև գտնվող հարթավայրում, որը ոչ միայն ուրարտական, այլև հայկական շրջանում հանդիսացել է որպես ձիարշավարան։ Բերվում է արձանագրության մի մասը։***

MLV, XXII; HChI, LVII; УКН, № №; HChI, № 75; КУКН, № 136.

*Խալդյան զորությամբ Մինուա Իշպուինորդին ասում է. – Հենց այս տեղից նժույգը՝ Արծիբի[1] անուն(ով), Մինուայի տակ ցատկեց քսաներկու կանգուն[2] (...)։*

*1. **Արծիբի** – Մինուայի նժույգի անունը, որը, հավանաբար, կապ ունի հայերենի «արծիվ» և վրացերենի «արծիվի» բառի հետ։ Սակայն, նկատի ունենալով այն հանգամանքը, որ վրացերենում արծիվը կոչվում է «օրբի» և «արծիվի» բառը փոխառություն է հայերենից, կարելի է ենթադրել, որ հայերենի «արծիվ» բառը ուղղակիորեն ծագում է Վանի թագավորության սեպագրի լեզվից կամ էլ հայերենից անցել է վերջինիս։*

*2. **«Կանգուն»** – երկարության չափ, որը հավասար է 51,8 սմ։ Այս հաշվով Մինուայի նժույգը ցատկել է 11 մ 39 սմ։ Պետք է նկատի ունենալ, որ նման սպորտային ձևում նժույգի ցատկի համամիութենական ռեկորդը՝ սահմանված 1947 թ.՝ 8 մ 20 սմ է, իսկ համաշխարհային ռեկորդը՝ սահմանված մինչև 1914 թ.՝ 11 մ 28 սմ. այն պատկանում է հունգարացի Ջանդլերին։ Արծիբե նժույգի ցատկը մնացել է չգերազանցված ընդհուպ մինչև 1975 թ. (այսինքն՝ 2800 տարի), երբ գերմանացի Կ. Բերգմանը իր Սվինգեր նժույգով ցատկեց 22 մ 16 սմ (տե՛ս նաև № 17, ծան. 4)։*

## 9.

### ՈՒԼՈՒԱՆԻ ԵՐԿՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

***ԱԲՈՎՅԱՆ. Ժայռափոր արձանագրություն, որ հայտնաբերվել է գյուղի հյուսիսարևելյան կողմում: Արձանագրությունը թյուրիմացաբար պայթեցվել է: Փրկված մասն այժմ գտնվում է Հայաստանի պատմության պետական թանգարանում:***

KHЗ, XXV; HChI, LXVI; УКН, № 131; HChI, № 85; КУКН, № 177.

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Էթիունի[1] (երկիրը): Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան զորությամբ արշավեց Արգիշտի Մինուայորդին (և) գրավեց Ուլուանի[2] երկիրը՝ Դարանի[3] (քաղաքի) երկիրը: Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին արքա (է) հզոր, արքա մեծ, արքա Բիայնիլի (երկրի), իշխանը Տուշպա քաղաքի:*

*1. **Էթիունի** - երկիր Հայկական լեռնաշխարհի հյուսիսում:*

*2. **Ուլուանի** - երկիր ներկայիս Աբովյան քաղաքի շրջակայքում:*

*3. **Դարանի** - Ուլուանե երկրի կենտրոնը: Հավանաբար գտնվել է ներկայիս Աբովյան քաղաքի տարածքում:*

## 10.

### ԷՐԵԲՈՒՆԻ ԲԵՐԴ-ՔԱՂԱՔԻ ՀԻՄՆԱԴՐՈՒՄԸ

***ԱՐԻՆ ԲԵՐԴ. Արձանագրված է շինարարական քարի վրա, ուրարտական ամրոցի գլխավոր մուտքի մոտ: Համարվում է Երևանի «ծննդյան վկայական»-ը՝ «տրված» Ք. ա. 782 թ.:***

HChI, LXX; УКН, № 138; HChI, № 91a; КУКН, № 197-198.

*Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին այս ամրոցը հոյակապ կառուցեց: Հաստատեցի Էրեբունի[1] անունը՝ Բիաինիլի (երկրի) զորությունը լուլուական[2] (= բարբարոսական) ցեղերի մեջ ամրապնդելու (համար): Արգիշտին ասում է. — Հողը չոր (?) էր: Կատարեցի մեծագործություններ հզոր այնտեղ: (Հաջորդում է արքայական տիտղոսաշարը):*

*1.* ***Էրեբունի*** *– քաղաք Արարատյան դաշտի հյուսիսարևելյան մասում: Հիշյալ տեղանունը պահպանված է ներկայիս Երևան քաղաքի անվան մեջ (տե՛ս նաև № 11, ծան. 24):*

*2.* ***Լուլուական*** *– այսինքն՝ բարբարոսական, ծչնամական: Ծագում է Զագրոսի շրջանում՝ Ուրարտուի և Ասորեստանի միջև բնակվող վայրենաբարո Լուլու ցեղի անունից:*

## 11.

### *ԱՐԳԻՇՏԻ I-Ի ԽՈՐԽՈՌՅԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ*

***ՎԱՆ. Փորագրված է Վանի քարաժայռի արևմտայն մասում: Հայտնաբերել է արևելագետ Ֆ. Է. Շուլցը 1828 թ.: Մինչև այժմ հայտնի ամենամեծ ուրարտական արձանագրությունն է: Բաղկացած է ութ սյունակից, որոնցից յոթերորդը համարյա լրիվ ջնջված է: Բերում ենք աննշան կրճատումներով:***

MLV, II–VIII; УКН, № 127; HChI, № 80; КУКН, № 173.

*(...) Արգիշտին ասում է. – Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին՝ իշխանական մեծությամբ, որի վերևում (լսում էին ինձ աստվածները): Այդ նույն տարում երրորդ անգամ զինվորներ գնդեցի, արշավեցի Դիաուխի[1] (ցեղի) վրա: Արքային Դիաուխի (ցեղի) հպատակեցրի(?), գրավեցի Շերիազի[2] ( երկիրը), քաղաքները այրեցի, ամրոցները ավերեցի: Կտրում էի մինչև Բուծի[3] (քաղաքը): Բուն(?) Բիանի[4] (և) Խուշանի[5] (երկրները) անջատեցի(?) ամբողջը(?) Թարիունի (երկրից): Արշավեցի Զաբախա (երկրի) վրա, գրավեցի Զաբախա (երկրի) գավառը(?): Կտրում էի մինչև Ուզինաբիթարնա (քաղաքը), մինչև Սիրիմութարա լեռը: Ամբողջը(?) Մակալթունի (քաղաքը) Իյանի[6] (երկրից) անջատեցի(?): Ելա Էրիախի երկրի վրա, արշավեցի Աբունի[7] (երկրի) վրա: Գրավեցի Ուրեյունի քաղաքն արքայական Վիտերուխի (երկրի): Տասնիննն հազար երկու հարյուր հիսունհինգ պատանի (քշեցի), տասը հազար հարյուր քառասուն զինվոր երիտասարդ, քսաներեք հազար երկու հարյուր ութսուն ստրկուհի(?), ընդամենը հինգ բյուր երկու հազար վեց հարյուր յոթանասունհինգ մարդ (մեկ) տարում: Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Հազար հարյուր չորս ձի քշեցի, երեսունհինգ հազար տասնվեց անասուն, տասը բյուր հազար ութ հարյուր քսանինը*

*ոչխար: Արգիշտին ասում է. – Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Աբելիանիխի[8] (ցեղի) երկիրը, Անիշթերգա (երկիրը), Կուարզանի (ցեղի) (երկիրը), Ուլթուզաինի (ցեղի) երկիրը, զգետնեց նրանց Արգիշտիի առջև: Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ արշավեց Արգիշտի Մինուայորդին: Խալդին առաջնորդում(?) էր (նրան): Արգիշտին ասում է. – Գրավեցի Էթիունի (երկիրը): Կտրում էի մինչև [...] (երկիրը), մինչև Ուդուրե Էթիուխի[9] (երկիրը): Մարդ, կին քշեցի: Արգիշտին ասում է. – Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին՝ իշխանական մեծությամբ, որի վերևում (լսում էին ինձ աստվածները): Հենց նույն տարում արշավեցի Ումելունի (?) (երկրի) վրա, գրավեցի Ուրյա (երկիրը), Տերտուբի(?) (երկիրը), գրավեցի Մուրուզու[10] (ցեղի) (երկիրը): «Մարե»-ական ժայռը(?), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի, մարդ, կին քշեցի: Գրավեցի Ուբարուգիլդու քաղաքն արքայական [...]: Կտրում էի մինչև Քուրուպերա (երկիրը), մինչև Թար(ե)րա (երկիրը) [...]: Արշավեցի, վերադարձա զորությամբ Քուաունի[11] (երկրի) վրա (...): Քաղաքները այրեցի, ամրոցները ավերեցի: Կտրում էի մինչև [...], մինչև [...]: Ընդամենը քսան հազար երկու հարյուր յոթանասունինը մարդ (մեկ) տարում: Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Հազար երկու հարյուր ուղտ [...] ձի քշեցի, [...] անասուն, տասներկու բյուր վեց հազար [...] ոչխար: Արգիշտին ասում է. – Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի: Արգիշտին արքա (է) հզոր, արքա մեծ, արքա Բիաինիլի (երկրի), իշխանը Տուշպա քաղաքի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Խաթի[12] (երկիրը), ենթարկեց Խիլարուադային[13], զգետնեց Արգիշտիի առջև: Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին ասում է.– Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտի Մինուայորդին ասում է. – Առաջնորդում(?) էր Խալդին: Հենց այդ նույն օրը (= ժամանակ) արշավեցի Խաթինիլի (երկրի) վրա, գրավեցի Նիրիբայի դաշտը[14] [...], Խուրմա(?)[15] (քաղաքը), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի, [...] ադա քաղաքն արքայական գրավեցի: Խալդյան մեծությամբ արշավեցի Խաթինիլի (երկրի) վրա: Ամբողջ(?) Տուատեխիի երկիրն[16] անջատեցի(?) բուն(?) Մելիտեա -*

յից[17]: Կտրում էի մինչև ՊիԹեյրա[18] (քաղաքի) տակ, մինչև Մեծ(?) Մելիայան գետը[19], Մարմուա[20] (և) Կալայա[21] (երկրները): Մարդ, կին (այնտեղից) հանեցի, ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի: Երկու հազար հինգ հարյուր երեսունինը պատանի (քշեցի), ութ հազար վեց հարյուր իննսունութ երիտասարդ(?), տասնութ հազար քառասունյոթ կին, ընդամենը քսանինն հազար երկու հարյուր ութսունչորս մարդ (մեկ) տարում: Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: [...] ձի, տասնյոթ հազար ինն հարյուր վաթսուներկու անասուն քշեցի, երկու բյուր [...] ոչխար: Արգիշտի Մինուայորդին ասում է.- Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Էթիունի (երկիրը), ենթարկեց Կեխունի[22] (քաղաքի) երկիրը, զգետնեց Արգիշտիի առջև: Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ արշավեց Արգիշտի Մինուայորդին: Խալդին առաջնորդում(?) էր (նրան): Արգիշտին ասում է.- Գրավեցի Կեխունե (քաղաքի) (ձորա)փոր(?) (երկիրը) ծովային գավառում: Կտրում էի մինչև Ալիշտու[23] (քաղաքը): Մարդ, կին (այնտեղից) քշեցի: Խալդյան հրամանով Արգիշտի Մինուայորդին ասում է.-Էրեբունի[24] (քաղաքը) կառուցեցի՝ Բիաինիլի (երկրի) զորությունը լուլուական[25] (= բարբարոսական) ցեղերի մեջ ամրապնդելու (համար): Հողը չոր(?) էր, ոչ (մի) բան կառուցված (չէր) այնտեղ: Հզոր մեծագործություններ կատարեցի այնտեղ: Վեց հազար վեց հարյուր մարդ ռազմական բնակեցրի այնտեղ Խաթիյան Ծուպայից[26]: Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին ասում է. - Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Հենց այդ նույն տարում արշավեցի Ուբուրդա[27] (երկրի) վրա: Իշ[.]ուբուրա արքային (և) Ուբուրդա-ալխի երկիրն իր գրավեցի: Էրդուա[28] քաղաքն գրավեցի, Վիշուշե (երկիրը) հպատակեցրի(?): Մարդ, կին հանեցի այնտեղից: Արշավեցի Խախիա (երկրի) վրա: Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի: Բի[...] (...) քաղաքը: Կտրիճ(?) մարդկանց այրեցի: Ութ հազար վեց հարյուր քառասունութ պատանի (քշեցի), երկու հազար վեց հարյուր հիսունհինգ երիտասարդ, ութ հազար չորս հարյուր իննսունյոթ ստրկուհի, ընդամենը՝ տասնինն հազար յոթ հարյուր իննսուն մարդ (մեկ) տարում: Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Երկու հարյուր երեսուներկու ձի քշեցի, [...] հազար ութ հարյուր երեք անասուն, տասնմեկ հազար վեց հարյուր քսանվեց ոչխար: Արգիշտին

ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց ասորեստանյան զորքը[29], ենթարկեց Արսիթա[30] (ցեղի) երկիրը, զգետնեց նրանց Արգիշտիի առջև: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Ասորեստանյան զորքի հետ[31] երկիրս լցվեց(?): Զինվորներ գնդեցի: Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի երկրի՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտին ասում է.– Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ հողաշերտը խորտակեցի(?) Դաղեի առջև Քուլաշե լեռան: [...] (...) տասնմեկ(?) հազար չորս հարյուր երեսունինը պատանի այնտեղից քշեցի(?): Ասորեստանցիներին վռնդեցի, սպանեցի, հանեցի երկրից: Հենց այդ նույն տարում արշավեցի Մենաբշու (քաղաքի) վրա, Դուկկամա (քաղաքի) վրա: [...] քաղաքն արքայական (և) երկիրն իր գրավեցի: [...] Շաարա-Ռաա (քաղաքը) Պուշթու[32] (երկրի) [...]: Արշավեցի Բաբիլու(ինի)[33] (քաղաքի) երկրի վրա, [...] Բարուաթա[34] (երկրի) վրա, Պարշուա[35] (երկրի) վրա: Պարշուայի երկիրը կերա (=յուրացրի), քաղաքները այրեցի: [...]: Հինգ(?) հազար(?) [...] քառասուն մարդ (մեկ) տարում: Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: [...] ձի քշեցի, ինն(?) հարյուր ութսունյոթ անասուն, [...] հինգ [...] ոչխար: Արգիշտին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Ասորեստանյան զորքը, ենթարկեց Պուշթու (երկիրը), Թարիունի[36] (երկիրը), զգետնեց նրանց Արգիշտիի առջև: Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Ամրոցներ կառուցեցի, Ցուրիլի[37] (երկիրն) իմ խաղաղեցրի(?), Ասորեստանյան զորքի հետ երկիրս լցվեց(?): Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ զորապետ(?) ուղարկեցի, Ասորեստանցիներին վռնդեցի, սպանեցի, հանեցի երկրից: Դադա[38] զորապետին(?) գովեցի(?): Հենց այդ նույն տարում արշավեցի [...] (երկրի) վրա, [...] (երկրի) վրա, Արխա (երկրի) վրա: [...] քաղաքն արքայական (և) վաթսուն քաղաք՝ ժողովրդով հանդերձ գերեցի: Արշավեցի Պուշթու (երկրի) վրա, գրավեցի Աբուրզանի (քաղաքը), [...] (քաղաքը), Կադուկանիու (քաղաքը), [...] (երկիրը) գրա -

*վեցի: Արգիշտին ասում է.– [...]: Կտրում էի մինչև Մա[...] լեռը: Տասնութ հազար ութ հարյուր քսանյոթ մարդ (մեկ) տարում (քշեցի): Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Վեց հարյուր վեց ձի (քշեցի), հարյուր ութսունչորս ուղտ, վեց հազար երկու հարյուր հիսունյոթ անասուն, երեսուներեք հազար երկու հարյուր երեք ոչխար: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Իյանե երկիրը, ենթարկեց Մանա[39] (երկիրը), Պուշթու (երկիրը), զգետնեց նրանց Արգիշտիի առջև: Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Հինգերորդ անգամ զորք գնդեցի: Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ արշավեցի Իյանե երկրի վրա: Երկիրը գրավեցի, ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի: Էրատելի[40] (քաղաքը) (և) Մյուս Էրատելե41 (քաղաքը) գրավեցի: Մարդ, կին այնտեղից քշեցի: Հենց այդ նույն տարում արշավեցի Մանա (երկրի) վրա: Գրավեցի(?) Պուշթու (երկիրը), Թուրա[...][42] (գետը) (և) «գարե»-ական ժայռը, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի: Մարդ, կին այնտեղից հանեցի: [...] Կտրում էի մինչև Վիխիքա[43] (քաղաքը) Պուշթու (երկրի): Տասնութ հազար երկու հարյուր քառասուներեք մարդ (մեկ) տարում (քշեցի): Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Յոթ հարյուր իննսուն [...] ձի (քշեցի), մեկ հարյուր ուղտ, քսաներկու հազար հինգ հարյուր անասուն, երեսունվեց հազար ութ հարյուր երեսուն ոչխար: Արգիշտին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Մանա երկիրը, ենթարկեց Իրքիունի (երկիրը), զգետնեց նրանց Արգիշտիի առջև: Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ՝ որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ արշավեցի Մանա (երկրի) վրա, գրավեցի Իրքիունե (երկիրը), կտրում էի մինչև Ասորեստանյան հարթավայրը[44]: Վեց հազար չորս հարյուր յոթանասունմեկ մարդ (մեկ) տարում (քշեցի): Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Երկու հարյուր ութսունվեց ձի (քշեցի), երկու հազար երկու*

*հարյուր հիսունմեկ անասուն, ութ հազար երկու հարյուր հինգ ոչխար: Արգիշտին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Մանա երկիրը, ենթարկեց Պուշթու (երկիրը), զգետնեց նրանց Արգիշտիի առջև Մինուայորդու: Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդին իմ զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ արշավեցի Պուշթու (երկրի) վրա, գրավեցի Առկայայի դաշտը Շաթիրա-Ռազա (երկրից): Ամբողջ(?) Ույիշթե (երկիրը) անջատեցի(?) բուն(?) Ուվշե (երկրից): Կտրում էի մինչև Ալատեյե լեռը: Երկիրը այրեցի, քաղաքները ավերեցի: Մարդ, կին այնտեղից քշեցի: Յոթ հազար հարյուր յոթանասուներեք մարդ (մեկ) տարում (քշեցի): Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Երկու(?) հարյուր իննսուն(?) ձի քշեցի, հարյուր մեկ ուղտ, չորս հազար ինն հարյուր ինն անասուն, տասնինն հազար հինգ հարյուր հիսուն ոչխար: Արգիշտին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Մանա (երկրի) զորքը, զգետնեց Արգիշտիի առջև Մինուայորդու: Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին ասում է.– Երբ Արգիշտիխինիլի[45] (քաղաքը) կառուցեցի (և) գետից (մի) ջրանցք Ազայան[46] երկրին անցկացրի, լսեցի, (որ) Մանա (երկիրը) Սիրա (քաղաքը) գրավել է: Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածնե - րին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արգիշտին ասում է.– (...) [...] զորքի մեջ՝ գնդի առջև, արշավեցի (և) Սիրա (քաղաքը) վերապաշարեցի Մանա (երկրի): Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Վերևից(?) փոնդեցի(?), ամրոցը գրավեցի, բնակեցրի, երկիրը կերա (=յուրացրի), քաղաքները այրեցի: Երեք հազար երկու հարյուր յոթանասուն մարդ (մեկ) տարում (քշեցի): Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Հարյուր յոթանասուն ձի քշեցի, վաթսուներկու ուղտ, երկու հազար չորս հարյուր տասնմեկ անասուն, վեց հազար հարյուր քառասուն [...] ոչխար: Արգիշտին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Տուարածյան դաշտը[47] մինչև Քուրքու[48] (լեռը), ենթարկեց Մանա (երկրի) զորքը,*

գգետնեց նրանց Արգիշտիի առջև: Արգիշտին ասում է.- Խալդին ինձ պարգևեց թե՛ քաջություն(?), թե՛ զորություն: Երբ Դաինալաթինի[49] (գետնից) ջրանցք անցկացրի, սարքեցի պատնեշը(?) Շուրիլի[50] (երկրի): Արգիշտի Մինուայորդին ասում է.- Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Զորք գնդեցի, արշավեցի Մանա (երկրի) վրա: Երկիրը կերա (=յուրացրի), քաղաքները այրեցի: Կտրում էի մինչև Վիխիքա (քաղաքը) Պուշթու (երկրի): Մարդ, ստրկուհի այնտեղից քշեցի: Տասներեք հազար ինն հարյուր յոթանասունինը մարդ (մեկ) տարում (քշեցի): Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Երեք հարյուր ութ ձի քշեցի, ութ հազար [...] հարյուր քսանմեկ անասուն, երեք բյուր երկու հազար հինգ հարյուր երեսունութ ոչխար: Արգիշտին ասում է.- Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Մանա երկիրը, ենթարկեց Էթիունի (երկիրը), գգետնեց նրանց Արգիշտիի առջև: Խալդին իմ զորեղ (է): Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին ասում է.- Արշավեցի Մանա (երկրի) վրա, երկիրը կերա (=յուրացրի), քաղաքները այրեցի: Շիմերեխաղերե[51] քաղաքն արքայական, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի: Մարդ, կին այնտեղից քշեցի: Արգիշտին ասում է.- Լսեցի, (որ) Էթիունի (երկիրը) Արդինի (քաղաքի) «աշտուղին»[52] հափշտակել է: Հենց այդ նույն տարում երրորդ անգամ զորք գնդեցի: Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները: Արշավեցի Էթիունի (երկրի) վրա: Գրավեցի Էրիախի (ցեղի) երկիրը, Կաթարզայան (ցեղի) երկիրը, կտրում էի մինչև Իշկիգուլու[53] (երկիրը): Մարդ, կին հանեցի դեպի Բիաինիլի (երկիրը): Արգիշտին ասում է.- Խալդյան մեծությամբ արշավեցի Վիտերուխի (երկրի) վրա: Երկիրը կերա (=յուրացրի), քաղաքները այրեցի: Մարդ, կին այնտեղից հանեցի: Ամիդու[54] քաղաքն արքայական Վիտերուխիական (երկրի), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի: Արձանագրություն դրեցի [...]: Վերադարձին [...] : Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Հազար երկու հարյուր [...] ձի, քսանինն հազար հինգ հարյուր չորս անասուն, վեց բյուր [...] ոչխարի քշեցի: Արգիշտին ասում է.- Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Թարիու[55] երկիրը, ենթարկեց (...) (երկիրը), գգետնեց նրանց Արգիշտիի առջև:

Խալդին իմ զորեղ (է)։ Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Արշավեցի Թարիու (երկրի) վրա։ Տասնմեկ ամրոց, (որ) ամրացված (էր), կռվում գրավեցի։ Խալդին [...] այնտեղ [...]։ Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդին ինձ պարգևեց թե՛ քաջություն(?), թե՛ զորություն։ Կառույցներ շատ (և) ամրոցներ այրեցի, ավերեցի։ Արձանագրություն դրեցի այնտեղ։ Մարդ, կին այնտեղից քշեցի։ Արգիշտին ասում է.– Հենց այդ նույն տարում երրորդ անգամ զորք գնդեցի։ Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները։ Արշավեցի Էթիունի (երկրի) վրա։ Գրավեցի Էրիախի (ցեղի) երկիրը։ Կաթարզայան (ցեղի) երկիրը, կտրում էի մինչև Իշկիգուլու[53] (երկիրը)։ Մարդ, կին Հանեցի դեպի Բիաինիլի (երկիրը)։ Արգիշտին ասում է.– Խալդյան մեծությամբ արշավեցի Վիտերուխի (երկրի) վրա։ Երկիրը կերա (=յուրացրի), քաղաքները այրեցի։ Մարդ, կին այնտեղից Հանեցի։ Ամիգու[54] քաղաքն արքայական Վիտերուխական (երկրի), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի։ Արձանագրություն դրեցի [...]։ Վերադարձին [...]։ Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա։ Հազար երկու Հարյուր [...] ձի, քսանինն Հազար Հինգ Հարյուր չորս անասուն, վեց բյուր [...] ոչխար քշեցի։ Արգիշտին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի։

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Թարիու[55] երկիրը, ենթարկեց (...) (երկիրը), գցեց նրանց Արգիշտիի առջև։ Խալդին իմ զորեղ (է)։ Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Արշավեցի Թարիունի (երկրի) վրա։ Տասնմեկ ամրոց, (որ) ամրացված (էր), կռվում գրավեցի։ Խալդին [...] այնտեղ [...]։ Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդին ինձ պարգևեց թե՛ քաջություն(?), թե՛ զորություն։ Կառույցներ շատ (և) ամրոցներ այրեցի, ավերեցի։ Արձանագրություն դրեցի այնտեղ։ Մարդ, կին այնտեղից քշեցի։ Արգիշտին ասում է.– Հենց այդ նույն տարում երրորդ անգամ զորք գնդեցի։ Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում լսում էին ինձ աստվածները (և) տվեցին ինձ ճանապարհ։ Արշավեցի Ուրմե[56] (երկրի) վրա։ Գրավեցի Ուրմե երկիրը, երկիրը կերա (=յուրացրի)։ Կտրում էի մինչև [...] (լեռը)։ Քաղաքները այրեցի, մարդ, կին տարա դեպի Բիաինելե (երկիրը)։ Ընդամենը քսան(?)չորս Հազար ութ Հարյուր տասներեք մարդ (մեկ) տարում (քշեցի)։ Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա։ ՔսանՀինգ ձի (քշեցի), [...] Հազար յոթ Հար -

յուր քառասունչորս անասուն, քառասունութ հազար ութ հարյուր քսանհինգ ոչխար: Արգիշտի Մինուայորդին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Երբ արքայացա[57], տարեկան ինձ Խալդին տվեց աչնանը(?).– Վեց հազար հինգ հարյուր վաթսունվեց անասուն, հիսունմեկ հազար ութ հարյուր յոթանասունութ ոչխար58: Արգիշտին ասում է.– Սույնը տարեցտարի եկավ(?):

Խալդյան մեծությամբ Արգիշտին ասում է.– Երբ Բեխուրա[59] (քաղաքը) վերապաշարեցի, Բեխուրա (քաղաքի) մարզի Բամ[60] (լեռը) փլվեց[61]. ծուխն(?) (ու) մուրը(?) այժմ վրայից(?) մինչև արևն (է) ելնում: Երբ Բամ (լեռը) փլվեց, ես Բեխուրա (քաղաքը) գրավեցի[62]:

Խալդյան մեծությամբ Արգիշտի Մինուայորդին ասում է.– [...]:

[...] Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց [...][63]:

Արգիշտի Մինուայորդին ասում է.– Ով այս արձանագրությունը ոչնչացնի, ով փչացնի, ով «ախիի» սրանք անի (կամ) ասի՝ «գնա՛, ոչնչացրո՛ւ», ով այլ ոք ասի՝ «ե՛ս կատարեցի», ով (մի) բան հենց սույն տեղից հանի «աուիեի», թող ոչնչացնե՛(ն) Խալդին, Թեյշեբան, Շիվինին (և) աստվածները նրան, սերունդն իր, սերնդի սերունդն իր արևի տակից, թեև արտը(?), (որ) մշակում(?) (է), թե՛ ընտանիքը(?), թե՛ մարդկանց(?) կորստի(?) ուղարկեն (= մատնեն)[54]:

1. **Դիաուխի** (այլ ընթերցմամբ՝ Տեյավեխի) – երկիր Ճորոխի ավազանում: Համապատասխանում է Մեծ Հայքի Տայք նահանգին:

2. **Շերիազի** – երկիր Կարինից հյուսիս-արևելք ընկած տարածքում:

3. **Բուլթի** – քաղաք Զալդր լճից հարավ-արևմուտք:

4. **Բիանի** – երկիր, մեր կարծիքով, գտնվել է հետագայի Վանանդի տեղում:

5. **Խուշանի** – երկիր, որը տեղորոշվում է Զալդր լճից հարավ-արևմուտք:

6. **Թարիունի** (երկիր), **Զաբախա** (երկիր, թերևս՝ Ջավախք), **Ուզինաբիթարնա** (քաղաք), **Սիրիմութարա** (լեռ), **Մակալթու** (քաղաք), **Իյանի** (երկիր) – գտնվել են Զալդր լճի մոտակայքում:

7. **Աբունի** – երկիր, Ն. Վ. Հարությունյանի կարծիքով Այրարատի Հավնունիք գավառը:

8. **Աբելիանիխի** – ցեղ, որի անունով կոչվում էր նաև նրա բնակեցրած երկիրը: Ըստ Կ. Հ. Բասմաջյանի՝ Այրարատի Աբեղյանք գավառը:

9. **Ուդուրե Էթիուխի** – վկայված է նաև Ուդուրե Էթիունի ձևով: Բավական ընդարձակ երկիր է, որն ընդգրկել է Սևանա լճի ավազանը:

10. **Ումելունի, Ուրյա, Տերտուբի, Մուրուգու** – երկրներ Ուրմիա լճից հարավ(?):

11. **Ուբարուգիլդու** (քաղաք), **Քուլուպերա, Թարերա, Քուաունի** (երկրներ) –

*հավանաբար գտնվել են Ուրմիա լճի արևելյան կողմերում:*

*12. **Խաթի** – երկիր Եփրատ գետի ոլորանից արևմուտք:*

*13. **Խիլարուդա** – Մելետիայի արքան:*

*14. **Նիրիբայի դաշտ** – ենթադրվում է, որ գտնվել է Քաշիյարա լեռներում:*

*15. **Խուրմա** – քաղաք, որի անվան սկիզբը տեքստում ջարդված է: Վերականգնվում է մեր կողմից:*

*16. Ժամանակին կարծվում էր, որ **«Տուատեխին»** ցեղանուն է (ցեղանվան և անձնանվան ցուցիչները նույնն են սեպագրում): Ավելի հավանական է այն տեսակետը, որ Տուատեխին անդրեփրատյան Թաբալ երկրի արքա Տուատխսն է (տե՛ս **Ա. Քոսյան**, Տուն Թորգոմայ, Երևան, 1998, էջ 13 – **կազմող**):*

*17. **Մելիտեա** – քաղաք Եփրատից արևմուտք, որի անունով կոչվում էր նրա շրջակա երկիրը: Հանդիսանում էր խեթական վերջին պետական կազմավորումներից մեկը՝ Խեթական կայսրությունից անմիջապես հետո:*

*18. **Պիթեյրա** – քաղաք Եփրատի արևելյան ափին, Արածանիի գետաբերանից հարավ: Կոնկրետ տեղադրությունը հայտնի չէ:*

*19. **Մեծ Մելիայան գետ** – Եփրատ գետը, որը խեթերենում կոչվել է Մալա: Այս դեպքում Արևմտյան Եփրատն է, որը հայտնի է նաև Պուրանա անվամբ:*

*20. **Մարմուա** –երկիր Եփրատի արևելյան ափերին՝ Արածանիի գետաբերանից հարավ:*

*21. **Կալայա** – երկիր նույն շրջանում: Վերականգնումը մերն է: Մեր կարծիքով, անտիկ աղբյուրների Գեղեցիկ դաշտը:*

*22. **Կեխունի** – քաղաք Սևանա լճի ափին:*

*23. **Ալիշտու** – քաղաք, միջնադարյան Աղստև ավանը, որի անունը պահպանված է Աղստև գետի անվան մեջ:*

*24. **Էրեբունի** – քաղաք, որ հիմնել է Արգիշտի I-ը Ք. ա. 782 թ.՝ ներկայիս Արին բերդի շրջանում:*

*25. Լուլուական – այսինքն՝ բարբարոսական (տե՛ս նաև № 10, ծան. 2):*

*26. **Խաթիյան Ծուպա** (այլ ընթերցմամբ՝ Խաթի, Ծուպա) – հետագայի Չորրորդ Հայքի Ծոփք գավառը:*

*27. **Ուբուրդա** – երկիր հետագայի Գուգարքի Տաշիր գավառում:*

*28. **Էրդուա** – քաղաք նույն վայրում:*

*29. **«Ասորեստանյան զորք»** – նման արտահայտությունը վկայում է այն մասին, որ Արգիշտի I-ը ոչ թե հարձակվել է Ասորեստանի վրա, այլ Ասորեստանն է նախահարձակ եղել և մտել Ուրարտու: Տեքստը, իրոք, այդ է վկայում:*

*30. **Արսիթա** (գուցե՝ Յարսիթա, այլ հնարավոր ընթերցումը՝ Վարսիթա) – ցեղ, որի անունով կոչվում էր նաև նրա բնակեցրած երկիրը: Ի. Մ. Դյակոնովի կարծիքով այն գտնվել է Ուրմիա լճից հարավ՝ Ասորեստանի և Մանայի միջև:*

*31. Բնագրում՝* ***«ասորեստանյան զորքի մեջ»*** *– խոսքը կա՛մ Արսիթա ցեղի մասին է, կամ մեկ այլ թշնամու՝ իրանալեզու ցեղերի(?), որոնք մասնակցել են Ասորեստանի Ք. ա. 781 թ. դեպի Ուրարտու կատարած արշավանքին:*

*32.* ***Պուշթու*** *– երկիր Ուրմիա լճից հարավ:*

*33.* ***Բաբիլու(հնի)*** *– Բաբելոն քաղաքը, որի անունով կոչվում էր նրա շրջակա երկիրը: Ենթադրվել է, որ այն կարող է համապատասխանել Դիյալա գետի հովտում բաբելականացված բնակչություն ունեցող Նամրու երկրին, ինչը քիչ հավանական է:*

*34.* ***Բարուաթա*** *– երկիր Ուրմիա լճից հարավ: Ի. Մ. Դյակոնովի կարծիքով հանդիսացել է ասորեստանյան աղբյուրների Բիթ-Բարրու երկիրը:*

*35.* ***Պարշուա*** *– երկիր Ուրմիա լճից հարավ:*

*36.* ***Թարիունի*** *– տե՛ս ծան. 6:*

*37.* ***Շուրիլի*** *– այս անվան բնույթը գիտության մեջ վիճելի է: Մեր կարծիքով երկիր է, որը թեկուզ և չի մտնում Արգիշտի I-ի տիտղոսաշարի մեջ, բայց առաջին անգամ որպես կոնկրետ երկիր հիշատակվում է հենց նրա կողմից:*

*38.* ***Դադա*** *– Թերևս Արգիշտի I-ի տուրտանը (սպարապետը):*

*39.* ***Մանա*** *– երկիր Ուրմիա լճի հարավային և հարավ-արևելյան ափերին: Հիշատակվում է նաև ասորեստանյան աղբյուրներում որպես Մաննա և Աստվածաշնչում (հրեական բնագրում) որպես Միննի:*

*40.* ***Էրատելե*** *– քաղաք Իյանե երկրում:*

*41.* ***Մյուս Երատելե*** *– քաղաք միևնույն վայրերում:*

*42.* ***Թուրա[...]*** *– գետ Պուշթու երկրում: Ենթադրվում է, որ այն ներկայիս Դիյալա գետն է, որը ասորեստանյան աղբյուրներում կոչվել է Թուրնաթ:*

*43.* ***Վիխիքա*** *– քաղաք Պուշթու երկրում:*

*44.* ***Ասորեստանյան հարթավայր*** *– Ասորեստանի հյուսիսարևելյան այն հատվածը, որը գտնվում էր Դիյալա գետի մոտակայքում(?): Արգիշտի I-ը, այսպիսով, փաստորեն, արևելքից ներխուժել էր Ասորեստանի թիկունքը: Ուրարտական «ալգանե» բառի «հարթավայր» թարգմանությունը առաջարկվում է մեր կողմից, որը հաստատվում է ՄՀերի դռան արձանագրության տվյալներով: Նախկին «լեռ(?)» թարգմանությունը քիչ հավանական է:*

*45.* ***Արգիշտիխինիլի*** *– քաղաք Արարատյան դաշտում, հետագայի Արմավիրը: Հիմնադրել է Արգիշտի I-ը Ք. ա. 776 թ.:*

*46.* ***Ազա*** *(գուցե՝ Յազա, մյուս հնարավոր ընթերցումը Ն. Վ. Հարությունյանի կարծիքով՝ Վազա) – ցեղ, որի անունով կոչվում էր նաև նրա բնակեցրած երկիրը: Համապատասխանել է եթե ոչ ամբողջ Արարատյան դաշտին, ապա գոնե նրա հյուսիսարևմտյան հատվածին:*

*47.* ***Տուարածյան դաշտ*** *– հետևելով նախորդ ուսումնասիրողներին, Գ. Ա. Ղափանցյանը այն տեղորոշում է Արաքսի վերին հոսանքների շրջանում՝*

*Տուրուբերանի Տուարածատափ գավառի տեղում:*

*48.* ***Քուրքու*** *– (այլ ընթերցմամբ՝ Գուրկու) – Սրմանց (Բյուրակն) լեռների հարավարևելյան մասերում գտնվող Քարքե լեռը՝ ըստ Գ. Ա. Ղափանցյանի:*

*49.* ***Դախնալաթինի*** *– Ն. Վ. Հարությունյանի կարծիքով այսպես է կոչվել Արածանի գետն իր վերին հոսանքների շրջանում (Մանազկերտի մոտակայքում):*

*50.* ***Շուրիլի*** *– երկիր Վանա լճից հյուսիս (տե՛ս ծան. 37):*

*51.* ***Շիմերեխադերե*** *– քաղաք Ուրմիա լճից հարավ և հարավ-արևելք գտնվող Մանա երկրում, թերևս նրա կենտրոնը տվյալ ժամանակաշրջանում:*

*52. Հ. Հ. Կարագյոզյանն այստեղ հարցական նշանով թարգմանում է «հասույթ»: Առավել հավանական է Գ. Ա. Մելիքիշվիլու մեկնաբանությունը, որն «աշտիուզի» բառը կապում է հայերեն «աստուած» բառի հետ, գտնելով, որ էթիունցիները Արդինի քաղաքից ռազմավար են տարել աստծո արձանը, որը վերադարձրել է Արգիշտի արքան: Այստեղ հետևել ենք Գ. Ա. Մելիքիշվիլիի մեկնաբանությանը (***կազմող***):*

*53.* ***Իշկիգուլու*** *– երկիր, հավանաբար, Այրարատ նահանգի Շիրակ գավառից հյուսիս ընկած վայրերում:*

*54.* ***Ամիգու*** *– քաղաք՝ Վիտերուխի երկրի կենտրոնը:*

*55.* ***Թարիունի*** *– երկիր Զալղր լճից հարավ- արևմուտք (տե՛ս նաև ծան. 6, 36):*

*56.* ***Ուրմե*** *– երկիր, որը մասնագետների կարծիքով գտնվել է Մեծ Հայքի Աղձնիք նահանգի արևմտյան մասում: Մեր կարծիքով, հիշյալ երկիրը տեղորոշվում է Տուրուբերանի Տարոն գավառում կամ նրա շրջակայքում:*

*57. Խոսքը վերաբերում է Արգիշտի I-ի գահակալության առաջին տարվան՝ Ք. ա. 786 թվականին:*

*58. Արգիշտի I-ի յուրաքանչյուր տարի ստացած տուրքի քանակը 6566 անասուն և 51.878 ոչխար էր:*

*59.* ***Բեխուրա*** *– բնակավայր Սևանա լճի ավազանում: Կոնկրետ տեղադրությունը հայտնի չէ:*

*60.* ***Բամ*** *(այլ ընթերցմամբ՝ Բամնի) – լեռ Սևանա լճի ավազանում:*

*61. Խոսքը, հավանաբար, երկրաշարժի և նրա հետևանքների մասին է:*

*62. Ամբողջ հատվածը ցույց է տալիս, որ Արգիշտի I-ը բնության այս արհավիրքը օգտագործել է որպես ժամանակը նշող փաստ՝ իր կողմից Բեխուրա քաղաքի նվաճումը թվագրելու համար: Դժբախտաբար, տվյալ հատվածը տրված է առանձին և չի մտնում Արգիշտի I-ի տարեգրության այս կամ այն տարվա նկարագրության մեջ, բայց, այնուամենայնիվ, կարելի է ենթադրել, որ հիշյալ երկրաշարժը տեղի է ունեցել այն տարիներին, երբ Արգիշտի I-ը արշավել է Սևանա լճի ուղղությամբ, այն է՝ Ք. ա. 782 թ. հետո և Ք. ա. 773 թ. առաջ, քանի որ այս թվականով էլ վերջանում է Արգիշտի I-ի տարեգրությունը:*

*63. Տարեգրության այս հատվածը խիստ տուժել է: Այն փորագրված է առանձին, ժայռափոր սենյակի մուտքի մոտ: Ենթադրվում է անգամ, որ այն տարեգրությանը չի վերաբերում: Սակայն, կարելի է կարծել նաև, որ այս հատվածը տարեգրության սկիզբն է, որը և պակասում է:*

*64. Պարբերության վերջին բառերից մի քանիսի թարգմանությունները առաջարկվում են մեր կողմից:*

## 12.

### ՍԵՎԱՆԱ ԼՃԻ ԱՎԱԶԱՆԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ ՄԻՆՉԵՎ ԱՐՑԱԽԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

***ԾՈՎԱԿ. Փորագրված է մի մեծ քարի վրա Սևանա լճի հարավային ափի մոտակայքում:***

KHЗ, XXIX; CICh, LIII; УКН, № 161; HChI, № 105; **КУКН, N 250.**

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Արկուկի (ցեղի) երկիրը: Սարդուրին ասում է.- Արշավեցի, գրավեցի Արկուկի (ցեղի) երկիրը, կտրեցի մինչև Ուրտեխի[1] (երկիրը): (Հաջորդում է արքայական տիտղոսաշարը):*

*1. **Ուրտեխի** - երկիր Սևանա լճից արևելք, որը Գ. Ա. Ղափանցյանի կարծիքով, համապատասխանում է Մեծ Հայքի Արցախ նահանգին՝ թե՛ անվամբ, թե՛ տարածքով:*

## 13.

### ԽԱՂՈՂԻ ԱՅԳԻՆ ՊԱՀՊԱՆԵԼՈՒ ԿԱՐԳԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏՈՒԳԱՆՔ ՁԱՆՑԱՌՈՒՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

***ԱՐՃԵՇ. - Ժայռափոր արձանագրություն Վանա լճի հյուսիսային ափերի մոտակայքում:***

MLV, XL; УКН, № 167; HChI, № 110.

*Խալդյան մեծությամբ Սարդուրի Արգիշտորդին այս խաղողուտը հիմնեց: Սարդուրին ասում է.- (Այն) արքան, ով հետո հենց այդ տեղից (= ժամանակից) տիրակալ լինի, թող (...) բազմաթիվ որթերից*

*(չ)վերցնի Հաստատված Սարդուրյան անունը Սարդուրյան խաղողուտի: Ով գողանա (կամ) ձի վարի, թող տա (մեկ) կանգուն մորթի (և) սանձը[1]: Սարդուրին ասում է.- Ով գողանա, թող ոչնչացնե՛(ն) Խալդին, Թեյշեբան, Շիվինին (և) աստվածները (նրան) արևի տակից:*

*1. Տվյալ նախադասության թարգմանությունը հիմնականում տրված է մեր կողմից, Մեր կարծիքով, այն ուրարտական արքունական-տաճարային օրենսգրքի հատվածներից մեկն է, օրենսգիրք, որից միայն հատուկանտ հատվածներ են մեզ հասել:*

## 14.

## *ՍԱՐԴՈՒՐԻ II-Ի ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ*

***ՎԱՆ. Փորագրված է Վանի քարաժայռի հյուսիսային կողմում պատրաստված Գանձադուռ (Խազինի կափուսի) կոչված ժայռախորշի մեջ կանգնեցված կոթողի չորս նիստերին (որի վերևի մասը, դժբախտաբար, բացակայում է) և նրա պատվանդանի առջևի նիստին, ինչպես նաև ժայռախորշի արևելյան պատի վերին մասում: Պատին փորագրված հատվածը հայտնաբերվել և ընդօրինակել է արևելագետ Ֆ. Է. Շուլցը դեռևս 1828 թ., իսկ կոթողը և պատվանդանը՝ Հ. Ա. Օրբելին՝ 1916 թ. Ն. Յ. Մառի ղեկավարած արշավախմբի աշխատանքների ժամանակ:***

АЭВ, XI-XIV; CICh, XXXII-XXXVII; УКН, № 155; HChI, № 103; КУКН, № 241.

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Մանա երկիրը, զգետնեց Սարդուրի Արգիշտորդու առջև : Խալդին (իմ) զորեղ (է), Խալդյան զենքն(?) իմ զորեղ (է): Արշավեց Սարդուրի Արգիշտորդին: Սարդուրին ասում է.- Արշավեցի Բաբիլու(նի)[1] երկրի վրա: Գրավեցի Բաբիլու(նի) երկիրը: Կտրում էի մինչև Բարուաթա[2] (երկիրը): Խալդյան մեծությամբ Սարդուրին ասում է.- Գրավեցի երեք ամրոց, (որ) ամրացված էին, կռվում գրավեցի: Քսաներեք քաղաք մեկ օրում նվաճեցի: Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի), մարդ, կին այնտեղից քշեցի: Ութ հազար հարյուր երեսունհինգ պատանի հանեցի, քսանհինգ հազար ստրուկ, վեց հազար մարդ ռազմական: Երկու հազար հինգ հարյուր ձի քշեցի, տասներկու*

*հազար երեք հարյուր անասուն, երեսուներկու հազար հարյուր ոչխար: Սույնը արքային եկավ (= հասավ), (իսկ) թե ինչ զինվորները քշեցին՝ առանձին քշեցին, երբ երկրից հեռացա: Հենց այդ նույն տարում կրկին արշավեցի էթիունի[3] (երկրի) վրա, Լիկլու[4] (երկրի) վրա: Էդիա[5] քա - ղաքն արքայական Աբիանական (ցեղի), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի. Էրվիա քաղաքն արքայական Էրքուայական (ցեղի), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի. Էրդուա քաղաքն արքայական Վեր- դա(յական) (ցեղի), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի. արքային*



**Գանձաղուռ**

Բուինի-ալխի (քաղաքի) (երկրի) ծառա դարձրի, Հարկի տակ գցեցի, Հարկը Սարդուրիին տալու (Համար), Այս չորս ամրոցները երկրում գրավեցի, մարդ, կին այնտեղից քշեցի: Երեք Հազար Հինգ Հարյուր պատանի, տասնՀինգ Հազար ստրուկ,չորս Հազար մարդ ռազմական քշեցի: Ութ Հազար Հինգ Հարյուր քսանՀինգ անասուն քշեցի, տասնութ Հազար ոչխար քշեցի: Այդ նույն տարում երրորդ անգամ արշավեցի Ուրմե[6] (երկրի) վրա: Տասնմեկ ամրոց գրավեցի, ավերեցի, մարդ, կին այնտեղից քշեցի: Հազար Հարյուր պատանի Հանեցի, վեց Հազար Հինգ Հարյուր կին, երկու Հազար մարդ ռազմական: Երկու Հազար Հինգ Հարյուր երեսունութ անասուն (քշեցի), ութ Հազար ոչխար: Սարդուրի Արգիշտորդին ասում է.– (ԱՀա) ինչ տղամարդություն երեք երկրներում մեկ տարում կատարեցի: Ընդամենը տասներկու Հազար յոթ Հարյուր երեսունՀինգ պատանի Հանեցի, քառասունվեց Հազար վեց Հարյուր կին խչեցի, տասներկու Հազար մարդ ռազմական քշեցի: Երկու Հազար Հինգ Հարյուր ձի քշեցի, քսաներեք Հազար երեք Հարյուր երեսունՀինգ անասուն (քշեցի), Հիսունութ Հազար Հարյուր ոչխար քշեցի: Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում Սարդուրի Արգիշտորդին կատարեց:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Մանա[7] երկիրը, ենթարկեց Էրիախի[8] երկիրը, զգետնեց նրանց Սարդուրիի առջև Արգիշտորդու: Խալդին զորեղ (է), Խալդյան զենքը(?) զորեղ (է): Արշավեց Սարդուրի Արգիշտորդին: Սարդուրին ասում է.– Դեպի այնտեղ արշավեցի՝ Մանա (երկրի) վրա: Երկիրը գրավեցի, քաղաքները այրեցի, ավերեցի, երկիրը կերա (= յուրացրի), մարդ, կին քշեցի դեպի Բիաինիլի (երկիրը): Դարբա ամրոցը, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի, բերդակալ(?) այնտեղ նշանակեցի(?), երկիրը գրկրիս վրա ավելացրի: Հենց այդ նույն տարում երրորդ անգամ ուղարկեցի զինվորներ դեպի Էրիախի (երկիրը): Երկիրը գրավեցին, քաղաքները այրեցին, ավերեցին, երկիրը կերան (= յուրացրին), մարդ, կին դեպի Բիաինիլի (երկիրը) քշեցին: Խալդյան մեծությամբ Սարդուրին ասում է.– (Ապա) ինչ տղամարդություն այնտաղ կատարեցի: Երեք Հազար երկու Հարյուր քսանՀինգ պատանի այնտեղից Հանեցի, չորս Հազար ինն Հարյուր քսանութ կին: Ընդամենը ութ Հազար Հարյուր Հիսուներեք մարդ: Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա: Չորս Հարյուր տասներկու ձի (քշեցի), վեց Հազար վեց Հարյուր վաթսունՀինգ անասուն, քսանՀինգ Հազար յոթ Հարյուր երեսունՀինգ ոչխար: Սարդուրի Արգիշտորդին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի: Սարդուրի Արգիշտորդին ասում

է.– Հենց այս տեղից (= ժամանակից) «նախիդի»-ն հաստատված (է)։

[...] արշավեցի Կուլխա[9] (երկրի) վրա։ Խալդյան մեծությամբ Խախա արքային Խուշա-ալխի[10] (երկրի) ժողովրդով հանդերձ գերեվարեցի, քշեցի, բնակեցրի երկրումս։ Սարդուրին ասում է.– Հենց այդ տարում զինվորները արշավեցին Աբելիանիխի[11] (երկրի) վրա։ Խալդյան մեծությամբ մեկ օրում երկիրն իր նվաճեցի։ Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի, երկիրը կերա (յուրացրի=), մարդ, կին այնտեղից քշեցի։ Սարդուրին ասում է.– Խալդիի փոխարեն(?) (ահա) ինչ տղամարդություն այնտեղ կատարեցի.– Մեկ(?) հազար ութ հարյուր իննսուն պատանի հանեցի, երեք հազար չորս հարյուր իննսուն երիտասարդ, վեց(?) հազար չորս հարյուր ութ ստրուկ քշեցի։ Ընդամենը՝ ինն հազար ինն հարյուր չորս մարդ։ Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա։ ՎաթսունՀինգ ձի քշեցի, [...] հազար իննսուն անասուն, տասը հազար ութ հարյուր իննսունյոթ ոչխար։ Սարդուրին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի։

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց արքային (և) Էրիախի (ցեղի) երկիրը, ենթարկեց Աբելիանիխի (ցեղի) գրկիրը, զգետնեց նրանց Սարդուրիի առջև Արգիշտորդու։ Խալդին զորեղ (է), Խալդյան զենքը(?) զորեղ (է)։ Խալդյան մեծությամբ Սարդուրի Արգիշտորդին։ Սարդուրին ասում է.– Արշավեցի Էրիախի (երկրի) վրա։ Գրավեցի Էրիախի երկիրը, մեկ օրում նվաճեցի։ Մառանները, որ հայրն (ու) պապն էին սարքել «աուիե», (որ) նույնիսկ պատնեշ(?) (էր) պատրաստված(?) (և) ոչ (մի) «ախշեի» արքաներ (չ)էին գրավել, Խալդյան հրամանով տիրական՝ ես մեկ(?) հարյուր հիսուն մառան գրավեցի, կողոպտեցի։ Մարդ, կին, տավար «դիդգուշի» այնտեղից հանեցի։ Քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի), մարդ, կին քշեցի դեպի Բիաինիլի (երկիրը)։ Սարդուրին ասում է.– Վերադարձին արշավեցի Աբելիանիխի (երկրի) վրա։ Քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի)։ Եկավ (առջևս) Մուրինի Աբելիանորդին, բռնեց (= գրկեց) Սարդուրյան ոտքերը, երկրպագում էր փորի(?) վրա ընկած։ Բնակեցրի տեղը, գցեցի հարկի տակ։ Սարդուրի Արգիշտորդին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն տղամարդությունը այնտեղ կատարեցի.– Յոթ հազար հարյուր հիսուն մարդ մեկ տարում (քշեցի)։ Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա։ Հինգ հարյուր ձի քշեցի, ութ հազար հինգ հարյուր վաթսուն անասուն, քսանհինգ հազար հարյուր յոթանասուն ոչխար։ Սույնը արքային եկավ (= հասավ), (իսկ) թե ինչ զինվորները հափշտակեցին՝ առանձին քշեցին, երբ երկրի հացը գնաց։

Սարդուրին ասում է.- Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործություն-ները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Ռաշունե ար-քային (և) Ռուխիշխանական երկիրը, ենթարկեց Դիուծինի Իյանորդի արքային (և) Էթիունի երկիրը, զգետնեց նրանց Սարդուրիի առջև Ար-գիշտորդու: Սարդուրին ասում է.- Հենց այս տեղից (= ժամանակից) «ազերե» բուն(?) «խարարե» հաստատված (է):

[...] Սարդուրին ասում է.- Արշավեցի Կուլխա (երկրի) վրա: Երկիրը գրավեցի, Իլդամուշա քաղաքն արքայական Միշա արքայի՝ Կուլխա-խայան (երկրի), (որ) ամրացված էր, կռվում գրավեցի: Մարդկանց այրեցի: Բերդակալը ոմն(?)՝ Կուլխա (երկրի), (որ) այնտեղ էր, սպա-նեցի: Կնիք երկաթյա սարքեցի, արձանագրություն Իլդամուշա (քա-ղաքում) գրեցի, ամրոցները, քաղաքները այրեցի, ավերեցի, երկիրը կերա (= յուրացրի), մարդ, կին քշեցի: Սարդուրիի ասում է.- Հենց այդ տարում երրորդ անգամ արշավեցի Վիտերուխի (երկրի) վրա: Երեք գավառապետ ապստամբած(?) էին, երեք տեղերում արշավանք կա-տարեցի: Խալդյան մեծությամբ երկիրը վերապաշարեցի, մեկ օրում նվաճեցի: Երկիրը կերա (= յուրացրի), մարդ, կին քշեցի: Ուրայա ամ-րոցը կառուցեցի, բերդակալ այնտեղ նստեցրի(?), Վիտերուխի(յան) ժողովրդին(?) այնտեղ բնակեցրի: Սարդուրին ասում է. - (Ահա) ինչ տղամարդություն (այնտեղ) կատարեցի: Ութ հազար հարյուր պա-տանի հանեցի, ինն հազար հարյուր տասը կին քշեցի: Ընդամենը՝ տասնյոթ հազար երկու հարյուր մարդ: Ոմանց սպանեցի, ոմանց կեն-դանի տարա: Հազար հինգ հարյուր ձի քշեցի, տասնյոթ հազար երեք հարյուր անասուն, երեսունմեկ հազար վեց հարյուր ոչխար: Սարդու-րին ասում է.- Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի:

Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց չորս արքանե-րի Ուդուրե-Էթիունյան[12] երկրում. արքային Արկուկիույան (ցեղի) (երկրի), արքային Քամանիուի[13] (ցեղի) (երկրի), արքային Լուերու-նիուի (ցեղի) (երկրի): Հենց այս տեղից (= ժամանակից) (...) հաս-տատված (է):

[...] այնտեղ արշաված (չէր): Սարդուրի Արգիշտորդին ասում է.- Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում, երկրնե-րում հեռավոր(?), լսում էին ինձ աստվածները (և) տվեցին ինձ ճա-նապարհ: Դեպի այնտեղ արշավեցի՝ Պուլուադի[14] (երկրի) վրա: Ելավ առջևս կռվով: Նորից վռնդեցի, փախցրի (= հալածեցի) մինչև Լիբլիու-

*նի (քաղաքը)։ Լիբլիունե քաղաքն արքայական, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի, արձանագրություն այնտեղ դրեցի*[15]*։ Քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի), մարդ, կին այնտեղից քշեցի։ Ամրոցներ այնտեղ կառուցեցի՝ Բիաինիլի (երկրի) զորությունը լուլույան (= բարբարոսական) ցեղերի մեջ ամրապնդելու (համար)։ Երկիրը երկրիս վրա ավելացրի։ Սարդուրին ասում է.– Հենց այդ տարում երրորդ անգամ արշավեցի Էրիախի (երկրի) վրա։ Երկիրը գրավեցի, քաղաքները այրեցի, ավերեցի, երկիրը կերա (= յուրացրի)։ Մարդ, կին քշեցի դեպի Բիաինիլի (երկիրը)։ Ամրոցներ այնտեղ կառուցեցի, երկիրը երկրիս վրա ավելացրի։ Խալդյան մեծությամբ Սարդուրին ասում է.– (Ահա) ինչ տղամարդություն այնտեղ կատարեցի։ Վեց հազար չորս հարյուր երեսունվեց պատանի այնտեղից հանեցի, տասնհինգ հազար հինգ հարյուր հիսուներեք կին քշեցի։ Ընդամենը՝ քսանմեկ հազար ինն հարյուր ութսունինը մարդ (մեկ) տարում (քշեցի)։ Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա։ Հազար վեց հարյուր տասներեք ձի (քշեցի), հարյուր տասնհինգ ուղտ (քշեցի), տասնվեց հազար հինգ հարյուր քսանինն անասուն քշեցի, երեսունյոթ հազար վեց հարյուր ութսունհինգ ոչխար քշեցի։ Սարդուրին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի։*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Կումախախալի*[16] *երկիրը, զգետնեց Սարդուրիի առջև Արգիշտորդու։ Խալդին զորեղ (է), Խալդյան զենքը(?) զորեղ (է)։ Արշավեց Սարդուրի Արգիշտորդին։ Սարդուրին ասում է.– Քուշթաշպիլի արքան Կումախա-ալխի*[17] *(երկրի) ինքնիշխան(?) էր։ Ոչ (մի) «աինիի» արքա այնտեղ արշաված (չէր)։ Սարդուրի Արգիշտորդին ասում է.– Աղոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ իշխանական մեծությամբ, որի վերևում, երկրներում հեռավոր(?), լսում էին ինձ աստվածները (և) տվեցին ինձ ճանապարհ։ Դեպի այն - տեղ արշավեցի՝ Կումախախալյան երկրի վրա։ Քիշթանի*[18] *քաղաքն արքայական, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի, Խալպա քաղաքն արքայական, (որ) ծովի դեմն էր, գրավեցի, Պարալա քաղաքն արքա - յական վերաշրջապատեցի։ Եղավ առջևս, երկրպագում(?) (էր), վերահաստատեցի (տեղը)։ Տվեց ինձ հարկ. քառասուն «մանա» ոսկի զտված, ութ հարյուր «մանա» արծաթ, երեք հազար հագուստ, երկու հազար վահան պղնձյա, հազար հինգ հարյուր երեսունհինգ թաս պղնձյա, երբ հենց այս տեղից (= ժամանակից) «ազիբի էդանի խարա - րի» հաստատված (է)։*

*Խալդյան զորությամբ Սարդուրի Արգիշտորդին ասում է.– Քամա*[19]

*ամսի քսանին զինվորներ գնդեցի: Ազոթում էի Խալդի տիրոջը, Թեյշեբային, Շիվինիին (և) աստվածներին Բիաինիլի (երկրի)՝ տիրական մեծությամբ, որի վերևում լուլույան (= բարբարոսական) (երկրներում) լսում էին ինձ աստվածները: Սարդուրին  ասում է. – Գնացի Էթիունի (երկրի) վրա: Երբ դարձա (= եղա) Էթիունի (երկրի) կողմում(?), ամբողջ(?)  Էրիախի (երկիրը) անջատեցի(?)  բուն(?)  Կուրիանի[20] (երկ - րից): Արշավեցի Իյանի (երկրի) վրա:*

*Խալդին արշավեց, սեփական զենքին(?) ենթարկեց Կապուրե արքային (և) Իյանեի երկիրը: Խալդին զորեղ (է), Խալդյան զենքը(?)  զորեղ  (է): Արշավեց Սարդուրին: Սարդուրին  ասում  է.– Երեսունհինգ ամրոց, երկու հարյուր քաղաք մեկ օրում նվաճեցի: Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի): Մարդ, կին այնտեղից հանեցի դեպի Բիաինիլի (երկիրը): Սարդուրին ասում է.– Հենց այդ ճանապարհին (= արշավանքում) արշավեցի Բուզունիայան[21] երկրի վրա, Ալկանիա (քաղաքի) վրա, Ծուդալա (քաղաքի) վրա: Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի):  Վերադարձին  արշավեցի  Էրիախի  (երկրի)  վրա:  Քաղաքները  այրեցի, մարդ, կին այնտեղից հանեցի: Այնտեղից դարձնում էի (= դառնում էի) (և)  արշավեցի  Իշթելուա  (երկրի)  վրա,  Կադիայան  (երկրի)  վրա, աբունե[22]  երկրի վրա,  Աբելիանիխի (ցեղի) (երկրի) վրա: Սարդուրին ասում է.– Ես զինվորներին (չ)հանձնեցի(?) ոչ (մեկին): Նախկին(?) գավառապետը ապստամբած էր: Արշավեցի գնդի առջև Վելիքուխի[23] (երկրի) վրա: Գրավեցի Վելիքուխի երկիրը: Քսաներկու ամրոց, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի: Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի): Մարդ, կին քշեցի դեպի Բիաինիլի (երկիրը): Սարդուրին ասում է.– Եկավ առջևս Նիդե արքան Վելիքուխի (երկրի): Երկրպագում(?)  էր: Ծառա դարձրի, հարկի տակ դցեցի, հարկը Սարդուրիին տալու (համար): Սարդուրին ասում է. – Հենց այդ տարում երրորդ անգամ արշավեցի Արկուկի (ցեղի) երկրի վրա: Ենթարկեցի Արկուկի (ցեղի) երկիրը, Ադախու (ցեղի) երկիրը, Լուերու (ցեղի) երկիրը, Էշումուա (ցեղի) երկիրը, Քամանիու[24] (ցեղի) երկիրը, Կուլալբա[25] (երկիրը), Ուխունի[26] երկիրը, Տերիանի[27] երկիրը: Քսան ամրոց, (որ) ամրացված էր, կռվում գրավեցի: Հարյուր քսան քաղաք մեկ օրում (= արշավանքում) նվաճեցի: Ամրոցները ավերեցի, քաղաքները այրեցի, երկիրը կերա (= յուրացրի): Մարդ, կին այնտեղից հա - նեցի: Սարդուրին ասում է.– Քանի մարդ իմ զենքի(?) առջևից ճողոպրում էր և բռնեց (= գրավեց) Ուշքիա (և) Բամ[28] (լեռները), վերապաշ - արեցի, սպանեցի: Ովքեր ճողոպրում էին, Թեյշեբան (= կայծակը) այ -*

րեց։ Սարդուրին ասում է.– Առանձին մարդ, կին զինվորներին տվեցի։ Սարդուրին ասում է.– (Ահա) ինչ տղամարդություն այնտեղ կատարեցի։ Տասը հազար պատանի հանեցի, չորս հազար վեց հարյուր երիտասարդ քշեցի, քսաներեք հազար երկու հարյուր կին, ընդամենը՝ երեսունյոթ հազար ութ հարյուր մարդ։ Ոմանց սպանեցի, ոմանց կենդանի տարա։ Երեք հազար հինգ հարյուր ձի (քշեցի), քառասուն հազար երեք հարյուր հիսուներեք անասուն, քսանմեկ բյուր չորս հազար յոթ հարյուր ոչխար։ Սարդուրին ասում է.– Խալդիի փոխարեն(?) սույն մեծագործությունները մեկ տարում կատարեցի։

Խալդյան մեծությամբ Սարդուրի Արգիշտորդին ասում է.– Երբ Խալդին ինձ արքայություն տվեց, ելա հայրական տեղն իմ արքայական (և) ինչ տրված (= հաղորդված) (է), այս «խիուշե»-ն Ծուրիների համար (= օգտին) ոչնչացրի (= կրճատեցի). իննսուներկու մարտակառք, երեք հազար վեց հարյուր նժույգ, երեսունհինգ բյուր երկու հազար տասնմեկ զինվոր՝ թե՛ հեծյալ, թե՛ հետիոտն։ Սույն տրվածը (= հաղորդվածը) զինվորների համար (= օգտին) ոչնչացրի (= կրճատեցի)։ (Իսկ) ինչ «խիուշե» էր, գցեցի։ Հարյուր քսանմեկ մարդ, տասը հազար չորս հարյուր ութ ձի, հարյուր երեսուներկու ջորի, տասներկու հազար երեք հարյուր քսանմեկ կով, ինն հազար երեսունվեց եզ։ Ընդամենը՝ քսանմեկ հազար երեք հարյուր հիսունյոթ անասուն, երեսունհինգ հազար չորս հարյուր վաթսունյոթ ոչխար, երկու հազար հարյուր տասնչորս զենք մարտական, հազար երեք հարյուր երեսուներկու աղեղ, քառասունյոթ հազար ինն հարյուր յոթանասուն նետ[29], հարյուր երկու բյուր երկու հազար հարյուր երերսուներեք «քապի» գարի, հարյուր տասնմեկ «ակարկի» գինի, ութսունվեց «ակարկի» յոթ «տերուսի» քսան «քալի» յուղ, յոթ հազար յոթանասունինը «մանա» պղինձ՝ երեք հարյուր երեսունվեց ամսում[30] Ուրուրդիների[31] համար (օգտին) ոչնչացրի (= կրճատեցի)։

Սարդուրի Արգիշտորդին արքա (է) հզոր, արքա մեծ, արքա Ծուրիլի (երկրի), արքա Բիաինիլի (երկրի), արքա արքաների, իշխանը Տուշպայական քաղաքի։

1. **Բաբիլու(նի)** – Բաբելոն քաղաքի երկիրը (տե՛ս նաև № 11, ծան. 33)։

2. **Բարուաթա** – երկիր Ուրմիա լճից հարավ (տե՛ս նաև № 11, ծան. 34)։

3. **Էթիունի** – լայնատարած երկիր Հայկական լեռնաշխարհի հյուսիսում։

4. **Լիկկիու** – երկիր, որը ըստ Ն. Վ. Հարությունյանի, գտնվել է Սևանա լճի ափերի մոտակայքում՝ Հրազդանի վերին հոսանքների շրջանում։

5. **Էղիա** – քաղաք, թերևս, Սևանա լճի մոտակայքում։

*6. **Ուրմե** – երկիր, թերևս, Տուրուբերանի Տարոն գավառը (տե՛ս նաև № 11, ծան. 56):*

*7. **Մանա**– երկիր Ուրմիա լճի հարավային և հարավարևելյան կողմերում:*

*8. **Էրիախի** – երկիր, Այրարատի Շիրակ գավառը:*

*9. **Կուլխա** – երկիր, թերևս, Ճորոխի ստորին ավազանում, հունական աղբյուրների Կոլխիդա երկիրը:*

*10. **Խուշա-ալխի** – երկիր, թերևս, Չալդր լճի հյուսիսարևմտյան կողմերում:*

*11. **Աբելիանիխի** – երկիր, համապատասխանում է Այրարատի Աբեղյանք գավառին:*

*12. **Ուդուրե Էթիունի** – Սևանա լճի ավազանի երկրների հավաքական անունը:*

*13. **Քամանիու** – ցեղ, ապրել է Սևանա լճի հարավային ափերին:*

*14. **Պուլուադի** – երկիր Իրանի հյուսիսարևմտյան շրջաններում, Արաքսի ստորին ավազանի հարավային կողմում:*

*15. Սարդուրի II-ի՝ Լիբլիունե քաղաքի մոտակայքում թողած արձանագրությունը հայտնաբերվել է:*

*16. **Կումախա-խալի** – երկիր Եփրատի արևմտյան ափին, Մալաթիայից հարավ: Անտիկ աղբյուրներում այն հայտնի է Կոմմագենե անվամբ:*

*17. **Կումախա-ալխի** – միևնույն Կումախա-խալի երկիրը:*

*18. **Քիշթանի** – քաղաք Կումախա երկրում, որը գտնվել է Եփրատից արևմուտք: Հիշատակվում է նաև ասորեստանյան աղբյուրներում որպես Քիշթա(ն): Գանձադոան տարեգրության մեջ այս տեղանունը սխալմամբ գրված է Ուիթանե: Ճշտումը մերն է:*

*19. **«Քամա ամիս»** – ուրարտական ամսանուններից մեկը, որի՝ նման թարգմանությունը մերն է: Դժվար է ասել, թե այն ո՞ր ամսին է համապատասխանում (տե՛ս նաև № 4, ծան. 1):*

*20. **Կուրիանի** – երկիր Չալդր լճի կամ Շիրակի մոտակայքում:*

*21. **Բուզունիա** – երկիր, որը ենթադրաբար տեղորոշվում է Շիրակից հյուսիսարևմուտք ընկած շրջաններում:*

*22. **Աբունի** – երկիր, Այրարատի Հավնունիք գավառը (տե՛ս նաև № 11, ծան. 7):*

*23. **Վելեքուխի** – երկիր Սևանա լճի հարավարևմտյան ափերին: Գ. Ա. Ղափանցյանի կարծիքով՝ Սյունիքի Գեղարքունիք գավառը:*

*24. **Արկուկե, Ադախու, Լուերու, Էշումուա, Քամանիու** – ցեղեր, որոնք ապրել են Սևանա լճի արևմտյան և հարավային ափերին:*

*25. **Կույալբա** (հնարավոր է նաև Կուվալբա ընթերցումը) – երկիր Սևանա լճի ավազանում:*

*26. **Ուխունի** – երկիր Սևանա լճի ավազանում, գուցե Արցախում:*

*27. **Տերիանի** – Ս. Տ. Երեմյանի կարծիքով՝ Արցախի Տռի գավառը:*

*28. **Ուչքիա, Բամ** – լեռներ Սևանա լճի մոտակայքում:*

*29. **«Աղեղ» և «նետ»** – տվյալ 1332 աղեղի և 47.970 նետի միաժամանակյա հիշատակությունը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր աղեղին հատկացվել է 36 նետ:*

*30. **«Երեք հարյուր երեսունվեց ամիս»** – Ֆ. Վ. Քյոնիգի ենթադրությամբ, սա Սարդուրի II-ի գահակալության ժամանակաշրջանն է ամիսներով հաշված, որը հավասար է 28 տարվա:*

*31. **Ուրուրդիներ** – ցեղ, ընդ որում՝ արտոնյալ, որի ինկությունը, սակայն, այնքան էլ պարզ չէ: Ենթադրել, որ այս ցեղանունը կապված է Ուրարտու երկրանվան հետ, բավական դժվար է:*

## 15.

### *ՍԵՎԱՆԱ ԼՃԻ ԱՎԱԶԱՆԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ*

***ԾՈՎԻՆԱՐ.** **Արձանագրությունը փորագրված է Սևանա լճի ափին, բարձր ժայռի ծովահայաց կողմում, որ կախված է եղել ուղիղ լճի ալիքների վրա: Այդ պատճառով էլ նրան մոտենալը դժվար էր թե՛ վերևից և թե՛ ներքևից: Այժմ, Սևանա լճի մակարդակն իջնելու հետևանքով, ժայռի տակը ցամաք է և նրան մոտենալը դյուրին:***

KHЗ, XXXI; CICh, XC; УКН, № 266; HChI, № 118; КУКН, № 389.

*Խալդյան զորությամբ տիրական Ռուսա Սարդարորդին ասում է.– Ես այս երկրները մեկ արշավանքում նվաճեցի, ծառա դարձրի՝ Ադախու (երկիրը), Վելեքուխի (երկիրը), Լուերուխի (երկիրը), Արկուկյան[1] (երկիրը), – չորս արքայի այս կող-*



***Պաշտամունքային կաթսա Երզնկայից***

*մից ծովային գավառում. Գուրկումիլի[2] (երկիրը), Ծանատուայան (երկիրը), Թերիվիչայան (երկիրը), Ռիչուայան (երկիրը)։ [...]գուայան (երկիրը), Արիայան (երկիրը, Զամանե (երկիրը), Երկիմայան (երկիրը), Էլայան (երկիրը), Էրելթուայան (երկիրը), Այդամանիու (երկիրը), Գուրիայան (երկիրը), Ալգերա (երկիրը), Պիրուայան (երկիրը), Շիլայան (երկիրը), Վիդուայան (երկիրը), Ատեզայան (երկիրը), Էրիայան (երկիրը), Ազամերունի (երկիրը), – տասնինն արքայի այն կողմից ծովային գավառում՝ լեռն(աշղթայի) ստորոտում։ Ընդամենը քսաներեք արքայի մեկ օրում (= արշավանքում) նվաճեցի։ Մարդ, կին դեպի Բիաինիլի (երկիրը) քշեցի։ Հարկային տարում եկա, կառուցեցի այս ամրոցները հենց այս երկրում(?) [...], Թեյշեբաինի[3] ամրոցը հոյակապ կառուցեցի, դրեցի անունը «Թեյշեբայի քաղաք»՝ Բիաինիլի (երկրի) զորությունը լուլույանների (= բարբարոսների) մեջ ամրապնդելու (համար)։ Ռուսան ասում է.– Ով այս արձանագրությունը ոչնչացնի [...]։*

*1. **Ադախու, Վելեքուխի, Լուերուխի, Արկուկի** – երկրներ Սևանա լճի հարավարևմտյան ափերին։*

*2. Գուրկումիլին և սրան հաջորդող տասնութ մյուս երկրները գտնվել են Սևանա լճի ավազանում կամ նրա մոտակայքում՝ լճից դեպի հարավ կամ արևելք։ Կոնկրետ տեղադրությունները հայտնի չեն։*

*3. **Թեյշեբաինի** – քաղաք-ամրոց, որ Ռուսա I-ը կառուցել էր Սևանա լճի հարավային ափերին, հավանաբար, Մարտունու շրջանի Ծովինար գյուղի տարածքում, որտեղ այժմ պահպանվում են նրա ավերակները։ Հիշյալ Թեյշեբաինի քաղաք-ամրոցը չպետք է շփոթել Կարմիր բլուրի վրա կառուցված Թեյշեբաինիի հետ։*

## 16.

### *ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԼՃԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՎԱՆԻՑ ԱՐԵՎԵԼՔ*

***ՏՈՆԻ. Արձանագրված է քարակոթողի վրա, որի սկիզբը մեզ չի հասել։ Արհեստական լիճը գոյություն ունի մինչև այսօր։***

*C*ICh, XXXVII; УКН, № 268; HChI, № 121; КУКН, № 391.

*Հողաշերտը կիտեցի լեռան ստորոտում, դաշտը հեղեղեցի, ուղղեցի ջրերը այնտեղ՝ առուների ու առվակների, դրեցի անունը Ռուսայի ծով[1]։ Անցկացրի ջրանցք այնտեղից դեպի Ռուսախինիլի[2]*

*(քաղաքը), հենց այդ հողով, որ չոր(?) էր: Բիաինացիների փորում էին հողաշերտը, (ինչպես) նաև՝ լուլույաններն (= բարբարոսները), (որ), իրոք, «չուլե» էր: Ռուսան ասում է.- Երբ Ռուսախինիլի (քաղաքը) կառուցեցի, երբ այս ծովը հիմնեցի, սահմանեցի. – Որդին (= բնակիչը) Տուշպայան (քաղաքի) կվարի (= կմշակի) (այսու)հետև իր հողը Ռուսախինիլի (քաղաքի) առջև, (եթե մշակի) նաև այսպիսի ծովային տեղը, (որ), իրոք չոր(?) (և) «չուլե» էր: Որդիներից (= բնակիչներից) ով կվարի (= կմշակի) հեռավոր (= օտար) որդու (= բնակչի) հողակտորը(?), «դիրե»-ն[3] պղնձյա կտա(?) սահմանված:*

*Ռուսան ասում է. – Հիմնեցի հենց այդ հողում խաղողուտ, անտառ, արտ ցորենի: Հզոր մեծագործություններ այնտեղ կատարեցի: Այս ծովը Ռուսախինիլի (քաղաքին) «խուրիշխի» թող լինի, թող ոռոգման(?) հրամանը կողմ (= դանց) (չ)առնեն(?) (...): Ջրերը Ալաինի[4] (գետից) թող հանեն դեպի Ռուսախինիլի (քաղաքը): Երբ ջրերը Ալաինի (գետի) Տուշպա (քաղաքի) հաստատված «ուլխուլինի», երբ ջրերը Ռուսախինիլի (քաղաքի) «իպշադուլե», «ապսիլաթինի» ինչքան ավելանա(?):*

*1. **Ռուսայի ծով** – արհեստական մեծ ջրամբար Վանից արևելք, որը գոյություն ունի մինչև այսօր: Ռուսա I-ի կողմից նման ջրամբարի կառուցման մասին գեղեցիկ նկարագրություն կա ասորեստանյան աղբյուրներում՝ Սարգոն II -ի 8-րդ արշավանքի մասին զեկուցագրի մեջ:*

*2. **Ռուսախինիլի** – քաղաք, որի հիմնադիրն է Ռուսա I-ը: Հանդիսացել է Տուշպա քաղաքի արվարձանը: Գտնվում էր ներկայիս Վանի հյուսիսարևելյան մասում:*

*3. Գուցե այստեղ պիտի հասկանալ «դրամ(?)»: Ըստ Ի. Մ. Դյակոնովի, ուրարտական արձանագրություններում հանդիպում է նաև «դրամի մարդ» (այսինքն՝ «դրամատեր») արտահայտությունը: Ամբողջ հատվածը ցույց է տալիս Ուրարտուի արքունական-տաճարային բնույթի մի օրենսգրքի հնարավոր գոյությունը, որի հատվածներից մեկն է, թերևս, հիշյալ կարգադրությունը:*

*4. **Ալաինի** – գետ, ըստ երևույթին, Տուշպայի մոտակայքում:*

## 17.

### ՄԱՐԶԱԿԱՆ ՆԵՏԱՁԳՈՒԹՅԱՆ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ

***ՎԱՆ. Արձանագրված է մի փոքր քարի վրա, որը գտնված է Վան քաղաքի Հայկավանք թաղամասում։***

ClCh, CI; УКН, № 277; HChI, № 123; **КУКН**, № **408**.

*Արգիշտի[1] Ռուսայորդին նետը վերագցեց հենց այս տեղից՝ Գիլուրա[2] (գյուղի) (?) անտառի առջև(ից), մինչև Իշպիլի[3] Բատուրդու այգին՝ ինն հարյուր հիսուն կանգուն[4]։*

1. **Արգիշտի II** (713-685) – Ռուսա I-ի որդին և հաջորդը։

2. **Գիլուրա** – բնակավայր Տուշպա քաղաքի մոտակայքում։

3. **Իշպիլի** – անձնանուն։

4. **«Կանգուն»** – երկարության չափ, որը հավասար է 51,8 սմ։ Այդ հաշվով Արգիշտի II-ը նետը արձակել է 492 մ (տե՛ս նաև № 8, ծան. 2)։

## 18.

### ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ-ՊԱՇՏԱՄՈՒՆՔԱՅԻՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

***ԿԱՐՄԻՐ ԲԼՈՒՐ. Արձանագրված է բազալտե հղկած յոթ շինաքարերի վրա, որոնք ագուցված են եղել շենքի պատի շարվածքում՝ երկու շարքով։ Բովանդակությունը բավականաչափ դժվարըմբռնելի է։ Բերում ենք որոշ կրճատումներով։***

НУНКБ, I; УКН, № 448; **КУКН**, № **424**.

*Խալդի տիրոջն իր այս տաճարը Ռուսա Արգիշտորդին կառուցեց, նաև՝ Խալդյան դարպասները հոյակապ Ազա[1] երկրի Թեյշեբաինի[2] քաղաքի, նվիրեց(?), ղոհաբերեց Խալդիին։ Ռուսան ասում է.- Ժայռը(?) ամուր(?) էր, հողը՝ չոր(?), ոչ (մի) բան այնտեղ կառուցված (չէր)։*

*Երբ ինձ Խալդին արքայություն տվեց, ելա (= բազմեցի) հայրական տեղն իմ արքայական մենաշնորհյալ(?) (և) այս Խալդյան դարպասները կառուցեցի հոյակապ։ Խալդիի կողմից, Խալդյան դարպասների կողմից թող լինի ողջություն, ուրախություն, մեծություն, նաև՝ իրավունք (և) առնական(?) զորություն։*

*Ռուսա Արգիշտորդին արքա (է) հզոր, արքա Շուրիլի (և) Բիաինիլի (երկրների)։*

*Ռուսան ասում է.- Խալդյան դարպասների կողմից (...) (մեկ) ուլ Խալդիին Թող ողջակիզեն, (մեկ) եզ Խալդիին Թող զոհաբերեն, (մեկ) ոչխար՝ Թեյշեբային, (մեկ) ոչխար՝ Շիվինիին, (մեկ) «չեխադե»՝ Անիկուին[3], (մեկ) կով՝ Յարուբանիին, (մեկ) ոչխար՝ Խալդյան զենքերին, (մեկ) ոչխար՝ Խալդյան դարպասներին, (մեկ) ոչխար՝ Իյարչային[4]։ Ռուսան ասում է.- (...) երբ հիմնեն, (մեկ) ուլ Խալդիին Թող ողջակիզեն, (մեկ) եզ Խալդիին Թող զոհաբերեն, (մեկ) կով՝ Յարուբանիին։ Երբ կառուցեն, վերջացնեն(?), (մեկ) ուլ Խալդիին Թող ողջակիզեն։ (մեկ) եզ Խալդիին Թող զոհաբերեն [...], (մեկ) կով՝ Յարուբանեին։ Երբ Խալդական տաճարում (...) անցկացնեն, (մեկ), ուլ Խալդիին Թող ողջակիզեն [...] (...)։*



**Դիցաբանական քանդակ Կարմիր բլուրից**

*1. **Ազա** (գուցե՝ Յազա, մյուս հնարավոր ընԹերցումը՝ Վազա) - ցեղ, որի անունով կոչվում էր նաև նրա բնակեցրած երկիրը (տե՛ս նաև № 11, ծան. 46)։*

*2. **Թեյշեբաինի** - քաղաք-ամրոց, որ հիմնել է Ռուսա II-ը ներկայիս Կարմիր բլուրի վրա։*

*3. **Տե՛ս** № 4, ծան. 2։*

*4. **Իյարչա** (նույնը՝ Իվարչա) - ԽաԹեյան Ծուպայից Արարատյան դաշտ տեղափոխված բնակչության գլխավոր աստվածը։*

## 19.

*ՄԱՐԴՈՒԿ ԱՍՏԾՈՒ ՀԻՇԱՏԱԿՈՒՄԸ*

***ԿԱՐՄԻՐ ԲԼՈՒՐ. Արձանագրված է բազալտե շինարարական քարի վրա: Տեքստը լրիվ չի պահպանվել: Բերում ենք կրճատումներով:***
НУНКБ, III; УКН, № 450; **КУКН, № 427.**

*(...) Ռուսա Արգիշտորդին ասում է.- Ով այս արձանագրությունը ոչնչացնի, ով փչացնի, ով ջարդի(?), ով գնա, սրանք անի, ով ասի. «ե՛ս կատարեցի», [...] (...), ով մեկին (...), թող ոչնչացնե(ն) Խալդին, Թեյշեբան, Շիվինին (և) Մարդուկը[1] թե՛ անունը, թե՛ սերունդը արևի տակից (...) [...]:*

*1. **Մարդուկ** - Բաբելոնի գերագույն աստվածը: Այստեղ, հավանաբար, հանդես է գալիս Բաբելոնիայի բնակչության՝ Արարատյան դաշտ տեղափոխվելու կապակցությամբ (տե՛ս նաև № 11, ծան. 33; № 14, ծան. 1):*

## 20.

*ԶԵԿՈՒՅՑ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ ԿԱՏԱՐՎԱԾ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ*

***ԿԱՐՄԻՐ ԲԼՈՒՐ. Արձանագրված է կավե սալիկի վրա: Բովանդակությունը բավական դժվարըմբռնելի է: Տալիս ենք աննշան կրճատումներով:***
УПД, № 7, УКН, № 462; **КУКН, № 520.**

*Ինուշ-չիլան[1] հրաման հանեց (= արձակեց).- Ասա Ուրմա[2] գավառապետին Ալիաու[3] սերմնացանի(?) (և) Աունաթա (սերմնացանի(?) (մասին) Ուրքիա (քաղաքի): Հաճելի(?) լինի(?) կյանքդ աստծուն, իրոք: Երկու լրտեսի(?)՝ Խալդիբուրային (և) Ուրադինին[4] գցեցի արքայի առջև: Նվերների(?) մեջ, որ ուղարկեցի(?) արքային, (կա) մեկ ձի, մեկ պատգարակ(?) ճանապարհային, մեկ գայլ(?), մեկ ջորի, երեսուն գերան(?), քսան «սուրի խիլխիլի», երկու «քապի» կիր(?): (Այս) բաները (= առարկաները) եկան մինչև Արտինի[5] բլրի(?) վրա: Ելավ առջևը նրանց հինգ ծիպայան[6] երիտասարդ(?)՝ որդիք (= բնակիչներ) Էրդիու (քաղաքի): Ցրեց(?) բոլորին: Ուրադին են-*

*Թարկվեց հարցաքննության(?)։ Երեք օր սպասեցի(?)։ Խալդիբուրան սահմանը(?) խախտեց(?)։ Այժմ բանտ(?) (է) գցված։ Մեկ ձի գողացավ այն երկրից։ Քշեցի Ծիպային (և) արքայի առջև արեցի (= ներկայացրի) կապված(?)։ Վախը կերավ (= բռնեց) (նրան) արքայի առջև։ Ոչ (մի) բան (չ)էր կեղծում (...)։ Այժմ ասված(?) (...) կատարի՛ր, գնա՛։ Երբ մարդն այս ձևով «ուշե»-ն (և) «քապե»-ն հասցնի(?) քեզ (...) ովքեր ցրվեցին(?), հաստատիր (= ստուգիր) բաները (= առարկաները) սայլերի(?) մեջ, նաև՝ մարդուն այս։ Ուրիշ (ահա) ինչ. երբ այս արձանավրությունը (= նամակը) հասցնի(?) քեզ, իրոք, արքայի առջև թող հանի (...) և թող վերադարձնի ժամանած մարդուն այս (և) ձիերը։*

*1. **Ինուշ-չիլա** – Ուրարտուի պետական կարևոր պաշտոնյաներից մեկը, թերևս, նահանգապետ։*

*2. **Ուրմա** – ուրարտական գավառապետներից մեկը, թերևս, զբաղեցրել է Թեյշեբաինիի ամրոցի պարետի պաշտոնը։*

*3. **Ալխաու** – թերևս լրտես է, որը բնագրում կոչվում է «սերմնացան(?)»։*

*4. **Աունաթա, Խալդիբուրա, Ուրադի** – թերևս նույնպես լրտեսներ են։*

*5. **Արտինի** – լեռ, որը ամենայն հավանականությամբ, գտնվել է Արարատյան դաշտի և Շիրակի միջև։ Մեր կարծիքով, համապատասխանում է Արագածի հարավային փեշերին գտնվող Արտին լեռանը։*

*6. **Ծիպա** – անձնավորություն, հավանաբար, ինչ-որ վնասարար խմբի ղեկավար, որը երևի, պարբերաբար հարձակում էր գործում ճանապարհորդների վրա։*





***Սեպագիր և հիերոգլիֆ կավե սալիկներ Կարմիր Բլուրից և Վանից***

## Ք. Ա. I ՀԱԶԱՐԱՄՅԱԿԻ ԲԱԲԵԼՈՆՅԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՄԱՍԻՆ

### *ԱՇԽԱՐՀԻ ԲԱԲԵԼՈՆՅԱՆ ՔԱՐՏԵԶԸ*

***Աշխարհի բաբելոնյան քարտեզն առաջին անգամ հրատարակել է Ֆ. Է. Փայզերը 1889 թվականին, որն այնուհետև ունեցել է մի քանի հրատարակություններ, սակայն բոլորն էլ՝ որոշակի թերություններով (մանրամասն տե՛ս*** W. Horowitz, The Babylonian Map of the World, "Irag", vol. L, 1988, *էջ 147)*: ***Քարտեզի առավել ամբողջական և անթերի հրատարակությունը կատարել է Վ. Հորովիցը*** (W. Horowitz, The Babylonian Map of the World, *էջ* 148-165, ***լուսանկարները՝ աղ.*** *X)*: ***Քարտեզում Հայաստանը հիշատակվում է ուշբաբելոնյան «Ուրաշտու» (= Ուրարտու) անվանաձևով: Հայագիտության մեջ եղել են այս քարտեզի մի շարք թերի, նաև սխալներով հրապարակումներ: Ամենատարածված սխալը քարտեզի գրություններում (3-րդ կետում) «Ուրաշտուի» փոխարեն «Արմենիա» երկրանվան նշումն է, ինչն անտեղյակության հետևանք է. բաբելոնյան աղբյուրներում Հայաստանը երբևէ հանդես չի գալիս «Արմենիա» անվամբ: Ստորև բերվում է քարտեզի բնագրի ամբողջական թարգմանությունը՝ կատարված Վ. Հորովիցի վերոհիշյալ հրատարակությունից (թարգմ. Ա. Մովսիսյանի):***

(Քարտեզի մակագրությունները)

***Լեռ***
***Քաղաք***
*Ուրարտու (Ուրաշտու)*
***Ասորեստան***
***Դեր***
*?-ra-[...]*
***Ճահճուտ***
*Սուզա (Շուշան)*
***Ջրանցք***
***Բիթ Յակին***
***Քաղաք***
***Խաբբան***
***Բաբելոն***









*Աշխարհի բաբելոնյան քարտեզը*

*Օվկիանոս*
*Օվկիանոս*
*Օվկիանոս*
*Օվկիանոս*
*Շրջան. 3 ասպարեզ է արանքում, որտեղ Արևը չի երևում*
*Շրջան. 6 ասպարեզ է արանքում*
*[Շրջա]ն. [ (...)*
*[Շրջան]. [ (...)*
*Շրջան. 8 ասպարեզ է արանքում*
*23-25.* (արձանագրություն չկա)

(Երեսակողմ)

*.......] .... [.........*

*......] .. կործանված քաղաքները [.....] . [.]*

*... անծայ]ր [ծովը], որ տեսել է Մարդուկը: Կամուրջը ներ[սում նրա?]*

*... ] . կործանված աստվածները, որ նա [հաստատել է] Ծովի ներսում:*

*.... ] .. ներկա են; իժը, ծովի մեծ օձը ներսում: Անզու-Թռչունը և կար[իճ-մարդը]*

*... լեռ[նային] այծ, վիթ, զեբու (սապատավոր եզ), հովազ, ցուլ-մարդ*

*[.. առ]յուծ, գայլ, կարմիր եղջերու, բորե[նի],*

*[կապ]իկ, էգ-կապիկ, այծեղջյուր, ջայլամ, կատու, քամելիոն (գետնառյուծ),*

*[...] կենդանիներ, որոնց Մարդուկն արարեց անհանգիստ ծովի վերևում,*

*[.. Ու]թնապիշտիմը, Սարգոնը և Նուր-[Դ]ագանը՝ արքան Բուրշախանդայի,*

*Թռչնի պես՝ Թևե[րով], որի ընդարձակությունը ոչ ոք չի կարողացել ը[մբռնել]:*

(Հակառակ երես)

*........ ] ? [......*
*....... ] ? հրաշ[քներ(?) .....*
*........ ] մեծ [.....*

*[Առաջին(?) շրջանը(?), երբ մեկը մտ]նում է, դու կճամփորդես ... ասպարեզ ...*

***Դ**եպի երկրորդ շրջանը], ուր կճամփորդես 7 աս[պարեզ ...*

*[....] մեկը ... ներ[քև ...*

***Դ**եպի երրոր]դ շրջանը, ուր կճամփորդես 7 ասպ[արեզ ...*

***Թ**ևավոր [Թռ]չունը չի կարող բարեհաջող ավար[տել իր Թռիչքը]*

*[**Դ**եպի չորրորդ շրջանը], ուր կճամփորդես 7 ասպ[արեզ ...*

*[...] . հաստ են parsikum չափի/անոԹի նման, 10/և մատ(ները) [...*

*[**Դ**եպի չորրորդ շրջանը], ուր կճամփորդես 7 ասպ[արեզ ...*

*[... է] դրա բարձրացումը/հեղեղումը; 780 արմնկաչափ է դրա ...*

*[...]. դրա առջևը/անձրևը; 120 արմնկաչափ է [դրա ...*

*[...]. դրա արյունը նա չի տեսնում [...*

*[... մենք պետք է մ]ազլցենք, ուր կճամփորդես [1...*

*[......]ես կճամփորդեմ 7 աս[պարեզ ...*

*[.......]. հեռացումը, որ գտնվում է .[...]-ում*

*[....] նրա ... նա կտրեց-անցավ [...*

*[**Դ**եպի վեցերորդ շրջ]անը, ուր կճամփորդես 7 [ասպարեզ ...*

*[......] գագաԹի [վրա?], ես .[...*

*[**Դ**եպի յոԹերո]րդ շրջանը, ուր կճամփորդես [7 ասպարեզ ...*

*որտեղ խոշոր եղջյուրավոր անասունը՝ զինված եղջյուրներով [...*

*նրանք վազում են արագ և հասնում [...*

***Դ**եպի [ու]Թերորդ շրջանը], ուր կճամփորդես 7 ասպ[արեզ ...*

*[....] տե[ղը], ուր ... լուսաբացներ դրա մուտքի(?) մոտ:*

*[.....]. ամբողջի **Ջ**որս **Բ**աժինների .[...*

*[.....]. , ում ներսը ոչ ոք չի կարող ճան[աչել]:*

*[.....]. պատճենված իր հին օրինակից և ստու[գված]*

*[.....] **Ի**ծծուրուի որդին, Էա-բել-իլ[ի]ի ժառանգը:*

## ԲԱԲԵԼՈՆՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՄԱՍԻՆ

*(Հատվածներ)*

***Մեզ են հասել հաջորդական դարաշրջաններ ներկայացնող բաբելոնյան սեպագիր տեքստեր, որոնք պատմագրության մեջ հայտնի են որպես «ժամանակագրություններ»: Դրանք կազմվել են Բաբելոնիայում, ինչպես բաբելոնյան զանազան հարստությունների, այնպես էլ երկրում ասորեստանյան (ապա նաև՝ աքեմենյան,***

***Հետագայում՝ սելևկյան) տիրակալների թագավորության ընթացքում: «Ժամանակագրությունների» մի մասը վերաբերում է ասորեստանյան տերության անկման և Բաբելոնիայում հաստատված քաղդեական հարստության կառավարման դարաշրջաններին: Պահպանված «ժամանակագրությունները» գտնվում են Լոնդոնի Բրիտանական թանգարանում:***

***Առաջին հրատարակությունները կատարվել են դեռևս XIX դարի վերջերին (*****H. Winckler, J. N. Strassmaier,** Studien und Beiträge zur babylonisch-assyrischen Geschichte, “Zeitschrift für Assyriologie und Vorderasiatische Archäoligie, Berlin - Leipzig”, ***1887, էջ 148-178): Հրատարակվել են բազմիցս՝ Կիրիլ Գեդդի, Դոնալդ Վայսմանի, Քըրք Գրեյսոնի, Ժան-Ժակ Գլասների և այլոց կողմից: Թարգմանությունը տրվում է ըստ*** **J.-J. Glassner,** Mesopotamian Chronicles, Atlanta, ***2004 (էջ 218-ից, հատկապես էջ 223-227) հրատարակության և Իգոր Դյակոնովի, Ջուլիան Ռիդի կատարած դիտարկումների (թարգմ. Երվանդ Գրեկյանի):***

*(B. M. 21901, ՀԿ 66-69) <Տասնյոթերորդ տարի[1]>: Թամմուզ ամսին, Աշշուր-ուբալլիտը[2]՝ Աշշուր (երկրի) արքան, Միծիր[3] երկրի ընդարձակ բանակը [կանչեց(՞) և(՞) ] անցավ գետը և արշավեց Խառան (քաղաքի) դեմ՝ նվաճելու (այն), [...... նրանք նվաճե]ցին (այն)[4]: Նրանք պարտության մատնեցին կայազորը, որը Աքադի արքան տեղակայել էր նրանում: Երբ նրանք պարտության մատնեցին (կայազորը), նրանք ճամբար դրեցին Խառան քաղաքի դեմ: Մինչև էյլուլ[5] ամիսը նրանք ճակատամարտ տվեցին քաղաքին, բայց ոչինչ չվերցրեցին, (այնուամենայնիվ), ետ (ևս) չքաշվեցին:*

*(ՀԿ 70-71) Աքադի արքան գնաց օգնելու իր զորքերին և ... [...] բարձրացավ (դեպի) Իզալա (երկիրը) և լեռներում բազում քաղաքներ [նա նվաճեց(՞)], նա հրդեհեց դրանց [...]:*

*(ՀԿ 72-75) Այդ օրերին բանակը ... (երկրի) արշ[ավեց] ընդհուպ մինչև Ուրաշտու[6] (երկրի) շրջանը: (Այդ) երկրում ... [...], նրանք ավարառության ենթարկեցին նրանց [...]: Կայազորը, որը ար[քան ...[7] կանգնեցրել էր դրանցում(՞), դուրս մղե]ցին և բարձացան ...: Աքադի արքան վերադարձավ իր երկիրը:*

*(ՀԿ 76-77) [Տասնութերորդ] տարի: էյ[լուլ ամսին], Աքադի արքան ժողովեց իր բանակը և ......[8]:*

* * *

*(B. M. 22047, Դկ 1-4) Նաբու-ապալ-ուծուր (արքայի) տասնութերորդ տարի: Էյլուլ ամսին, Աքադի արքան ժողովեց իր բանակը և, չարժվելով Տիգրիս գետի երկայնքով, նա բարձրացավ դեպի լեռները Բիթ-Խանունիա (երկրի)[9]՝ Ուրաշտու (երկրի) շրջանում: Նա հրդեհեց քաղաքները (և) վերցրեց մեծածավալ ավար: Տեբեթ[10] ամսին Աքադի արքան վերադարձավ իր երկիրը:*

*(Դկ 5-11) Տասնիններորդ տարի: Սիվան[11] ամսին, Աքադի արքան ժողովեց իր բանակը և Նաբու-կուդուրրու-ուծուրը՝ իր ավագ որդին, գահաժառանգ արքայազնը, ժողովեց իր բանակը և նրանք բարձրացան դեպի Զա[Թուրի(՞)[12]] (երկիրը): Աքադի արքան թողեց արքայազնին և իր բանակը (այդ) լեռներում, մինչ ինքը Թամմուզ(՞) ամսին վերադարձավ Բաբելոն: Նրա մեկնելուց հետո Նաբու-կուդուրրու-ուծուրը ճակատամարտ տվեց Բիրանատու[13] (քաղաքին), որը լեռներում է, Բիրանատու (քաղաքը) գրավեց, հրդեհեց (այն), մեծ ավար վերցրեց լեռներից, ընդհուպ մինչև [Ծուի[14] շրջանը[15]] (ձգվող(՞)) բոլոր լեռները նա նվաճեց:*

*(Դկ 12-14) Էյլուլ ամսին արքայազնը վերադարձավ Բաբելոն: Տիշրի[16] ամսին Աքադի արքան ժողովեց իր բանակը և գնաց դեպի Կիմուխու[17], որը Եփրատ գետի ափին է: Նա անցավ գետը, ճակատամարտ տվեց քաղաքին և Կիսլև[18] ամսին նա նվաճեց քաղաքը:*

*(Հկ 15) Գույքը նրա տարավ (և) տեղավորեց նրանում իր կայազորը: Շեբեթ[19] ամսին նա վերադարձավ իր երկիրը:*

*(Հկ 16-18) Քսաներորդ տարի: Միծիր (երկրի) բանակը եկավ Կիմուխու քաղաք ընդդեմ կայազորի, որը տեղակայել էր Աքադի արքան, չորս ամիս (չարունակ) նրանք ճակատամարտ տվեցին քաղաքին (և այնուհետ) նվաճեցին քաղաքը, Աքադի արքայի կայազորը (նրանք) կոտորեցին:*

*(Հկ 19-23) Տիշրի ամսին Աքադի արքան ժողովեց իր բանակը, չարժվեց Եփրատ գետի երկայնքով և դրեց իր ճամբարը Կուրամատի (քաղաքում)[20], որը Եփրատի ափին է: Նա անցկացրեց իր զորքերը Եփրատ գետը, և նրանք գրավեցին Շունադիրի, Էլամմու և Դախամմու (քաղաքները), որոնք Եփրատի այն ափին են: Նրանք ավար դրանցից տարան: Շեբեթ ամսին Աքադի արքան իր երկիրը վերադարձավ:*

*(Հկ 24-26) Միծիր (երկրի) բանակը, որ Կարգամիշում էր, անցավ*

Եփրատ գետը և եկավ Աքադի բանակի դեմ, որը կանգնած էր Կուրամատե (քաղաքում), և Աքադի բանակին ետ մղեցին, և այն ետ վերադարձավ:

* * *

(B. M. 21946 **ԴԿ** 1–8) [Քսանմեկերորդ տարի]: Աքադի արքան մնաց իր երկրում (մինչ) Նաբու-կուդուրրու-ուծուրը՝ իր ավագ որդին (և) գահաժառանգ արքայազնը, ժողովեց [Աքադի բանակը], (իր ձեռքը) վերցրեց բանակի առաջնորդությունը և արշավեց դեպի Կարգամիշ[21] (քաղաքը), որը Եփրատ (գետի) ափին է: Նա անցավ գետը՝ [հանդիպելու համար Միծիր երկրի բանակին], որը բանակել էր Կարգամիշում: [...] Նրանք ճակատամարտեցին միմյանց դեմ: Միծիր (երկրի) բանակը ետ մղվեց նրա առջև: Նա պարտության մատնեց նրանց (և) ջախջախեց ամբողջապես: Համաթ (երկրի) շրջանում Աքադի բանակը հասավ Միծիր (երկրի) բանակի մնացորդներին, որոնց հաջողվել էր խույս տալ պարտությունից և որը չէր հաղթվել: Նրանք[22] պարտության մատնեցին նրանց (այնպես), որ ոչ մի մարդ չվերադարձավ իր երկիրը: Այդ ժամանակ Նաբու-կուդուրրու-ուծուրը նվաճեց ողջ Համաթ (երկիրը):

1. Խոսքը վերաբերում է Բաբելոնիայում քաղդեական հարստության հիմնադիր Նաբոպալասարի (Նաբու-ապալ-ուծուր, 626-605) կառավարման տարիներին, տվյալ դեպքում՝ Ք. ա. 609 թվին:

2. Սա Ասորեստանի վերջին արքան էր (Աշշուր-ուբալլիտ II), կառավարել է 612–609(՞) թվերին:

3. Միծիր երկիրը Եգիպտոսն է:

4. Այլ մեկնաբանություն է տալիս այս հատվածին Իգոր Դյակոնովը: Նա վե - րականգնում է. «[..., բայց քաղաքներին(՞) նրանց(՞) ձեռքը(՞) չտի]րեց, քանի որ կայազորը, որը Աքադի արքան տեղակայել էր նրանում, ջարդ[եց(՞) նրա]ն(՞)» (**И. М. Дьяконов**, Малая Азия и Армения около 600 г. до н.э., էջ 38 և ծանոթություն 37): Միաժամանակ տե՛ս և հմմտ. **S. Zawadzki**, The Fall of Assyria and Median-Babylonian Relations in Light of the Nabopolassar Chronicle, Poznan, 1988, էջ 122–ից, ըստ որի, այստեղ խոսքը կարող է վերաբերել քաղաքից դուրս բանակած աքադական կայազորի ճամբարի նվաճմանը:

5. Բաբելոնյան օրացույցի վեցերորդ ամիսը, համապատասխանում է օգոստոս-սեպտեմբեր ամիսներին:

6. Ուրաշտու՝ Ուրարտու երկրի բաբելոնյան անվանաձևը: Բուն տեքստում

*երկրանունը կրում է «քաղաք» որոշիչը:*

*7. Դ. Վայսմանը այստեղ տեսնում է Աքադի արքային և տեքստը վերականգնում ըստ այդմ (արքան [Աքադ (երկրի)]):*

*8. Այստեղ գրիչը հասել է աղյուսակի վերջին: Քանի որ հնարավոր չի եղել տեքստը շարունակել, այն ավարտել է հետևյալ տողերով. «Թող նա, ով սիրում է Նաբու և Մարդուկ (աստվածներին), հող տանի (այս աղյուսակի մասին), թույլ չտա, որ այն ընկնի (ուրիշի) ձեռքը»:*

*9. Պետական կազմավորումներ, բառացի՝ «տներ», որոնք այդպես են կոչվում հիմնադրի, սակավ՝ ցեղի (տոհմի) անունով: Բիթ-Խանունիա «երկիրը» կամ «տունը» համադրվում է Խնուսի (Խնունիս) հետ (**И. М. Дьяконов,** Малая Азия и Армения около 600 г. до н. э., էջ 43-44): Ուշագրավ է, որ Ռուսա II-ի կառավարման շրջանով թվագրվող ուրարտական մի քանի սեպագիր տեքստերում հիշատակվում է ոմն Խանունի, որը եղել է «պալատական»:*

*10. Բաբելոնյան օրացույցի տասներորդ ամիսը, համապատասխանում է դեկտեմբեր-փետրվար ամիսներին:*

*11. Բաբելոնյան օրացույցի երրորդ ամիսը, համապատասխանում է մայիս-հունիս ամիսներին:*

*12. Ընթերցումն ըստ* **J. E. Reade,** *Why did the Medes Invade Assyria, in F. M. Fales (Ed. in Chief), Qontinuity of Empire? Assyria, Media, Persia, History of the Ancient Near East / Monographs – V, Padova, 2003, էջ 154: Համադրվում է Ծուբրիայի հետ հիշատակվող Զադուրի քաղաքին:*

*13. «Ամրոց» (birtu) բառի հոգնակի ձևն է, ուստի և հնարավոր է ուղղակի կարդալ «ամրոցներին»* [**D. J. Wiseman,** *Chronicles of Chaldean Kings (626-656 B.C.) in the British Museum, էջ 65;* **И. М. Дьяконов,** Малая Азия и Армения около 600 г. до н. э., *էջ 39 և ծանոթություն 47, 48]:*

*14. Ամենայն հավանականությամբ՝ Վանա լիճը (**J. E. Reade**, Why did the Medes Invade Assyria, էջ 154): Տեքստը սակայն վնասված է: Ք. Գրեյսոնը, օրինակ, այստեղ վերականգնում է «Ուրաշտու» երկրանունը և թարգմանում ըստ այդմ: Նույնպես և* **J.-J. Glassner,** *Mesopotamian Chronicles, էջ 224-225-ում: Հմմտ. նաև* **И. М. Дьяконов,** Малая Азия и Армения около 600 г. до н. э., *էջ 39 և ծանոթություն 49:*

*15. Սույն հատվածի վերակազմությունը տրվում է ըստ* **J. E. Reade,** *Why did the Medes Invade Assyria, in F. M. Fales (Ed. in Chief), Qontinuity of Empire? Assyria, Media, Persia, History of the Ancient Near East / Monographs - V, Padova, 2003, էջ 154:*

*16. Բաբելոնյան օրացույցի յոթերորդ ամիսը, համապատասխանում է սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին:*

*17. Ենթադրվում է, որ խոսքը վերաբերում է Կումմուխ (Կոմմագենե) երկրի*

համանուն մայրաքաղաքին: Այստեղ տեսնել Բարձր Հայքի Կամախ ամրոցը (Անի-Կամախ) քիչ է հավանական:

18. Բաբելոնյան օրացույցի իններորդ ամիսը, համապատասխանում է նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին:

19. Բաբելոնյան օրացույցի տասնմեկերորդ ամիսը, համապատասխանում է հունվար-փետրվար ամիսներին:

20. Ժ.-Ժ. Գլասների մոտ՝ «Կուրաբաթի»: Տե՛ս **J.-J. Glassner,** Mesopotamian Chronicles, էջ 226-227:

21. Տեքստում՝ «Գալգամեչ»:

22. Տեքստը նկատի ունի Բաբելոնյան («Աքադ երկրի») բանակին:

## ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ
## (Ք. Ա. VII-VI ԴԱՐԵՐ)

***Ինչպես նշվել է վերը, Աստվածաշունչը կրոնական սրբազան գիրք լինելուց բացի կարևոր պատմական սկզբնաղբյուր է: Նախապատմական-առասպելական տեղեկություններից բացի Աստվածաշնչում առկա են նաև արժեքավոր տեղեկություններ Հայաստանի Ք. ա. VII-VI դարերի պատմության առանձին հարցերի վերաբերյալ, որոնք ներկայացվում են ստորև:***

### 1.

### *ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆՑ ՉՈՐՐՈՐԴ ԳԻՐՔ, գլ. ԺԹ, 36-37*

***Ասորեստանի Սենեքերիմ արքան[1] չվեց ու գնաց բնակվեց Նինվեում: Երբ նա երկրպագում էր իր Նեսրաք աստծու տանը[2], նրա որդիներ՝ Ադրամելեքն[3] ու Սարասարը[4], նրան սրով հարվածեցին և Արարատի երկիրը[5] փախան: Նրա փոխարեն թագավորեց իր որդին՝ Ասորդանը[6]:***

1. **Սենեքերիմ** - Ասորեստանի Սինախերիբ (705-681) թագավորն է, Սարգոն II-ի որդին:

2. Խոսքը Նեսրաք աստծո տաճարի մասին է:

3. Ադրամելեք անվան տակ ուսումնասիրողները տեսնում են Սինախերիբի Արադ-Նինլիլ (կամ Արադ-Նիլլիլ) որդուն:

4. **Ի** դեմս Սարասարի, ուսումնասիրողները տեսնում են ասորական զորապետ Նաբու-շարուծուրին:

5. Արարատ/ղը Հայաստանի ընդհանրական անվանումներից մեկն է: Խոսքն այստեղ Ուրարտու-Արարատյան թագավորության մասին է: Աստվածաշնչի եբրայական բնագիրը, հունական (Յոթանասնից), ասորական (Պիշետա) և արաբական թարգմանությունները հայրասպան որդիների ապաստարան երկիրն անվանում են Արարատ կամ Արարադ, քաղդեականը՝ Կարդու: Ի դեպ՝ սույն հատվածը տեղ է գտել նաև Աստվածաշնչի «Մարգարէութիւն Եսայեայ» գրքում (տե՛ս **Եսայի**, գլ. ԼԷ, 38): Այստեղ եբրայական բնագիրը և լատինական թարգմանությունը (Վուլգատա) հայրասպան որդիների ապաստարան երկիրն անվանում են Արարատ, հունական և արաբական թարգմանությունները՝ Արմենիա, իսկ ասորականը և քաղդեականը՝ Կարդու: Այսինքն՝ Արարատ, Արարադ և Կարդու երկրանունները գործածված են որպես Արմենիա - Հայք երկրանվան հոմանիշներ:

6. **Ասորդան** - Ասորեստանի Ասարխադդոն թագավորն է (680-669)՝ Սենաքերիբի կրտսեր որդին:

## 2.

## ԵՐԵՄԻԱ, գլ. ԾԱ, 27

**Դրո՛շ բարձրացրեք երկրի վրա[1], փո՛ղ փչեցեք բոլոր ազգերի մեջ, զորագնդե՛ր կանչեցեք նրա (Բաբելոնի) դեմ: Իմ կողմից հրամա՛ն տվեք Այրարատյան թագավորություններին[2] և Ասքանազյան գնդին[3]:**

1. Բաբելոնի վրա հարձակվելու և այն կործանելու Երեմիա մարգարեի մար - տահրավերի սույն հատվածը թվագրվում է Ք. ա. 594-592 թվականներին:

2. Այրարատյան թագավորությունը, որին Երեմիան հորդորում է ընդդեմ Բա - բելոնի, ամենայն հավանականությամբ, Երվանդունիների նորաստեղծ հայկական պետությունն էր: Կան նաև տեսակետներ, որ խոսքն այստեղ դեպի անկում գնացող ուրարտական պետության մասին է, որ քիչ է հավանական: Աստվածաշնչի եբրայական բնագրում և նրա լատինական թարգմանություններում երկրանուն - ները թվարկված են հետևյալ կերպ՝ «... Արարադի, Մինիի և Ասքանազի թագավորություններին», հունականում՝ «... Արարատի թագավորության ու Ասքանազյան գնդին», քաղդեականում՝ «... Կարդու թագավորություններին», իսկ Հովնաթան Բաբունու մեկնություններում՝ «... Կորդվաց, Խուրմինե և Հադեր թագավորություններին»:

3. Խոսքն այստեղ սկյութական Աշքենազ կամ Իշքուզա ցեղային միության մասին է: Ք. ա. VIII դարում սկյութները Հյուսիսային Կովկասից թափանցում են Կուր գետի հարթավայրերը և հաստատվում Շակաշեն գավառի շրջանում: Ք. ա.

*VII դարում Ուրմիա լճի հարավային ափերին սկյութները ստեղծում են մի զորեղ քաղաքական միավորում, որը նշանակալից դեր է խաղում Նինվեի գրավման (Ք. ա. 612 թ.) և Ասորեստանի կործանման գործում:*

3.

*ԵԶԵԿԻԵԼ, գլ. ԻԷ, 14*

***Թորգոմա*[1] *տնից*[2] *մարդիկ է, որ ձիերով, հեծյալներով ու ջորիներով լցրել են քո (Տյուրոս քաղաքի) շուկաները:***

*1. Թորգոմը բիբլիական Նոյ նահապետի Հաբեթ որդու սերնդից էր (տե՛ս* ***Ծննդոց****, գլ. Ժ, 2-3 և* ***Առաջին Մնացորդաց****, գլ. Ա, 5-6): Հայ և օտար եկեղեցական մատենագիրներն ու պատմագիրները հայերին սերած էին համարում հիշյալ Թորգոմի տոհմից: Դրա համար էլ նրանք հաճախ Հայաստանը անվանում են «Տունն Թորգոմայ», իսկ հայերին՝ «Որդիք կամ Ազգն Թորգոմայ», «Թորգոմածին», «Թորգոմեան»: Հայկական ժողովրդական ավանդությունը ևս հայերի նախահայր Հայկին համարում է Թորգոմի որդին, իսկ «Թորգոմայ տունը»՝ Հայաստանի հոմանիշ:*

*2. Ի տարբերություն Աստվածաշնչի հունական թարգմանության «Տունն Թորգոմայ» երկրանունի՝ եբրայական բնագրում այն անվանված է «Թոգորմա երկիր», որը Եզեկիել մարգարեի (592-570) վկայության համաձայն տեղադրվում էր Գամեր (Գամիրք-Կապադովկիա) երկրի մոտ՝ նրա հյուսիսային շրջաններում: Ուսումնասիրողները իրավացիորեն «Թոգարմա երկիրը» նույնացնում են խեթական արձանագրություններում հիշատակվող Թեգարմա և ասուրաբաբելական աղբյուրների Թիլ-Գարիմմու բնակավայրի հետ ու այն տեղադրում են հետագայի Երկրորդ Հայքի տարածքում՝ Մելիտինե և Արաբկիր քաղաքների շրջաններում:*

*Եզեկիել մարգարեի սույն վկայությունը կարևոր է նաև այն տեսակետից, որ ցույց է տալիս, թե այդ վաղնջական ժամանակներում հայերը մասնակցել են համաշխարհային առևտրին, մասնավորապես նրանք Փյունիկիայի Տյուրոս մայրաքաղաքի վաճառանոցներն էին արտահանում ձիեր և ջորիներ:*

## 4.

### *ԵԶԵԿԻԵԼ, գլ. ԼԸ, 6*

***Գոմերին[1] ու բոլոր նրանց, որ նրա չուրջն են, Թորգոմա տունը՝ հյուսիսի կողմերից[2], ու բոլոր նրանց, որ նրա չուրջն են:***

*1. **Գոմեր կամ Գամեր** – Նոյի որդու՝ Հաբեթի որդին էր և հայրը Թորգոմի (տե՛ս **Ծննդոց**, գլ. Ժ, 2–3): Ուսումնասիրողները «Գոմեր» կամ «Գամեր» անվան տակ ենթադրում են կիմմերներին, որոնք ասորեստանյան արձանագրություններում անվանվում են Գիմիրի: Ք. ա. VIII դ. երկրորդ կեսին կիմմերները մերձսևծովյան տափաստաններից ներխուժեցին Անդրկովկաս ու Փոքր Ասիա և բնակություն հաստատեցին հետագայի Կապադովկիայի տարածքում: Իրենց տևական արշավանքներով կիմմերները նպաստեցին Ուրարտուի և Ասորեստանի արագ թուլացմանը: Հետաքրքիր է այն փաստը, որ հայկական հնագույն աղբյուրները Կապադովկիան անվանել են Գամիրք:*

*2. Եզեկիելի մարգարեության սույն հատվածը, որը հիշատակում է Ք. ա. 593 թվականի տակ, մեկ անգամ ևս հնարավորություն է տալիս պնդելու, որ Թորգոմի տունը գտնվում էր Գամիրք-Կապադովկիայից հյուսիս՝ հետագայի Փոքր և Բարձր Հայքերում և արևելք՝ Եփրատի ափին:*





*Բրոնզե վահան Վանից*



## ԲԱԺԻՆ ԵՐՐՈՐԴ

# ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

## Ք. Ա. VII–VI ԴԱՐԵՐԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴՐՎԱԳՆԵՐՆ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### *ԻԱ*

### ԱՅՆ ՄԱՍԻՆ, ՈՐ ՍԿԱՅՈՐԴՈՒՑ ԾՆՎԱԾ ՊԱՐՈՒՅՐՆ ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԹԱԳԱՎՈՐՈՒՄ Է ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, ՕԳՆՈՒՄ Է ՄԱՐԱՑԻ ՎԱՐԲԱԿԵՍԻՆ ՍԱՐԴԱՆԱՊԱԼԻՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐՑՆԵԼՈՒ

*Բաց թողնելով դեպքերից ոչ շատ կարևորները, ասենք ինչ որ անհրաժեշտ է: Այս վերջիններից մի մասը եղել է ասորեստանցիների թագավորության ժամանակ, մի մասն էլ Շամիրամից կամ Նինոսից հետո, իսկ մեր Պարույրն*[1] *եղավ Սարդանապալի*[2] *ժամանակ: Սա քիչ օգնություն ցույց չի տվել մարացի Վարբակեսին՝*[3] *թագավորությունը Սարդանապալից վերցնելու:*

*Ահա այժմ ես կուրախանամ՝ ոչ փոքր խնդություն զգալով, որ հասնում եմ այն տեղերը, ուր մեր բնիկ նախնիի սերունդները թագավորության աստիճանի են հասնում: Ուստի վայել է մեզ այստեղ մեծ գործ կատարել և շատ խոսքեր գրել, որոնց ակունքները մենք ինքներս արժանացանք կարդալու իմաստուն, իմաստունների մեջ իմաստնագույն և բազմարդյուն հեղինակի չորս հագներգությունների*[4] *մեջ:*

*Որովհետև Վարբակեսը՝ ծննդավայրով մեդացի, այս շատ ամուր երկրի ծայրի աննշան կողմերից, կյանքում չափազանց խորամանկ, կռիվների մեջ խիզախ, գիտենալով Թոնոս Կոնկողեռոսի տմարդի*

*բնավորությունը և հեշտասեր ու թուլամորթ ծուլությունը՝ իր սիրալիր վարմունքով ու առատաձեռնությամբ ավելացնում է իրեն բարեկամներ այն քաջ ու պիտանի մարդկանցից, որոնց ձեռքով այն ժամանակ ամուր ու հաստատուն կերպով հայտնապես կառավարվում էր Ասորեստանի աշխարհակալ պետությունը. իր կողմն է գրավում նաև մեր քաջ նախարար Պարույրին՝ խոստանալով նրան թագավորության շուք և ձև: Գումարում է նաև քաջ մարդկանց մեծ բազմություններ, որոնք չափազանց շատ հմուտ էին նիզակ, աղեղ և սուր գործածելու մեջ: Այս կերպով Սարդանապալից թագավորությունը գրավելով՝ տիրում է Ասորեստանին և Նինվեին: Բայց Ասորեստանի վրա վերակացուներ թողնելով՝ թագավորությունը փոխադրում է Մարաստան:*

*Բայց եթե այս բանը ուրիշների մոտ տարբեր է պատմվում, մի զարմանար: Որովհետև ինչպես որ մեր (պատմության) առաջին գլուխներում մեղադրեցինք մեր հին նախնիների անխմաստասեր բարքն ու ճաշակը, նույնը պատահում է և այստեղ: Որովհետև ինչ գործեր որ կատարվել են Նաբուգոդոնոսոր[5] հոր կողմից, գրի են առնված նրանց հիշատակագիրների ձեռքով, իսկ մերոնք, որովհետև այսպիսի բան չմտածեցին, (նրանց գործերը) նշանակվեցին վերջում: Բայց եթե հարցնես, թե ո՞րտեղից մենք այսպես գիտենք մեր նախնիների անունները, այլև շատերի գործերը, կպատասխանեմ. քաղդեացիների, ասորեստանցիների և պարսից հին դիվաններից, որովհետև մեր նախնիները եղել են նրանց գործակալները և նրանց կողմից մեր երկրի վրա նշանակված վերակացուներ ու մեծ կուսակալներ լինելով՝ սրանց անուններն ու գործերը մուծվել են արքունի գրքերի մեջ:*

## *ԻԲ*

### ՄԵՐ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԿԱՐԳԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԹՎԱՐԿՈՒՄԸ ՀՈՐԻՑ ՈՐԴԻ

*Այժմ ես կանցնեմ թվարկելու մեր մարդկանց, մանավանդ թագավորներին, մինչև Պարթևների տերության (հաստատվելը): Որովհետև մեր թագավորների մեջ ինձ այս մարդիկ են սիրելի, իբրև բնիկներ, արյունակիցներ և իսկական հարազատներ: Ես շատ կփափագեի, որ ա՛յն ժամանակ Փրկիչն եկած և ինձ գտած լիներ, որ նրանց ժամանակ ես աշխարհ եկած լինեի, նրանց տերությամբ զվարճանայի և այժմյան վտանգներից խուսափած լինեի: Բայց շատ*

*վաղ մեզանից այս դրությունը փախավ, գուցե նաև վիճակը: Բայց ես այժմ օտարների թագավորության ժամանակ ապրելով՝ նրանց հետ միասին պետք է նշանակեմ մեր թագավորների կարգը, որովհետև մեր աշխարհի բնիկ պսակավորներն այն մարդիկ են, որոնց անունները ներքևը կարձանագրենք:*

*Եվ որ իսկապես այդ ժամանակները մեր ազգը թագավորություն ուներ, վկայում է նաև Երեմիա մարգարեն իր մարգարեության մեջ՝ Բաբելոնի դեմ պատերազմի հրավիրելով. «Հրաման տուր, ասում է նա, Այրարատյան թագավորությանը և Ասքանազյան գնդին»[6]: Սա ապացույց է, որ այդ ժամանակ մենք ունեցել ենք թագավորություն:*

*Բայց մենք (մեր թագավորների) ցուցակը կկազմենք, մոտը դնելով նաև Մարաց թագավորներին:*

| **Մարաց առաջին** | **Իսկ մեր առաջինը, Մարացի Վարբակեսից թագադրված** |
|---|---|
| Վարբակես | Պարույր, Սկայորդու որդին |
| Մոդակիս | Հրաչյա* |
| Սոսարմոս | Փառնավազ |

* Սա Հրաչյա է կոչվում առավելապես պայծառ երես և բոցավառ աչքեր ունենալու համար: Ասում են, թե սրա ժամանակն է ապրել բաբելացիների արքա Նաբուգոդոնոսորը, որը հրեաներին գերեց: Եվ ասում են, որ սա Նաբուգոդոնոսորից խնդրեց գերված եբրայեցիների գլխավորներից մեկին՝ Շամբաթ անունով և բերեց մեր երկրում բնակեցրեց մեծ պատվով: Պատմագիրն ասում է, թե սրանից սերվեց Բագրատունիների ցեղը, և այս ստույգ է: Բայց թե ինչպիսի ջանքեր գործ դրին մեր թագավորները՝ նրանց ստիպելու, որ կուռքերը պաշտեն և թե նրանցից քանիսը և ովքեր աստվածապաշտությամբ վերջացրին իրենց կյանքը, հետո հաջորդաբար կպատմենք: Որովհետև մի քանի անվստահելի մարդիկ[9] ասում են, ըստ իրենց ենթադրության, բայց ոչ ճշմարտությամբ, իբր թե Բագրատունիների թագադիր ցեղը ծագում է Հայկից: Ուստի ես ասում եմ. այսպիսի հիմար խոսքերի մի՛ հավատար, որովհետև ոչ մի հետք կամ ապացույց չկա այդ խոսքերում, որ ցույց տա նրանց ճշմարտությունը: Որովհետև Հայկի և նմանների մասին էլ կակազում են վայրիվերո և անկարգ կերպով: Բայց իմացիր, որ Սմբատ անունը Բագրատունիները հաճախ դնում են իրենց երեխաների վրա, իսկապես Շամբաթն է նրանց հին՝ եբրայական լեզվով:

Աոտիկաս
Դեովկես
Փռավորտես
Կվաքսարես
Աժդահակ[7]

Պաճույճ
Կոռնակ
Փավոս
Մյուս Հայկակ
Երվանդ Սակավակյաց
Տիգրան[8]

*Որովհետև ես հավանական եմ գտնում, որ սրանց անունով կոչված են վերջին Երվանդն ու Տիգրանն ըստ հույսի, ժամանակը շատ հեռու չլինելով՝ մեկը հիշած կլինի այս անունները:*

*1. Պարույրը պատմական անձնավորություն է, ուսումնասիրողները գտնում են, որ նա Արմե-Շուբրիայի կառավարիչն էր մ. թ. ա. VII դ. վերջերին: 612 թ. Պարույրը մասնակցել է Նինվեի գրավմանը և Մարաստանի արքա Կիաքսարի կողմից ճանաչվել Արմե-Շուբրիայի թագավոր:*

*2. Սարդանապալը Ասորեստանի թագավոր Աշշուրբանապալն է (668-633):*

*3. **Վարբակես** - Կտեսիասի և անտիկ մյուս պատմիչների, նաև Խորենացու մոտ անվանումն է Մարաց թագավոր Կիաքսարի (625-584):*

*4. Բանասիրության մեջ գոյություն ունի կարծիք, որ Դավիթ Անհաղթն է չորս հագներգությունների հեղինակը:*

*5. Նաբուգոդոնոսորը եղել է Ասորեստանի թագավոր մ. թ. ա. 605-562 թվականներին:*

*6. Հմմտ. **Աստվածաշունչ, Երեմիա**, գլ. ԾԱ, 27:*

*7. Մարաց թագավորների Խորենացու բերած սույն արքայացանկը լի է կիսա - առասպելական անձնավորություններով:*

*8. Հայոց առաջին թագավորների այս ամբողջ ցուցակում, ինչպես կարծում են ուսումնասիրողները, պատմականորեն հավաստի են համարվում միայն Երվանդ Սակավակյացն ու վերջինիս որդի Տիգրան Երվանդյանը:*

*9. Դժվար է ասել, թե ովքե՞ր են այս «մի քանի անվստահելի մարդիկ», որոնց մասին ակնարկում է Պատմահայրը:*

## ՀԱՅ-ՄԱՐԱԿԱՆ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ Ք. Ա. VI ԴԱՐՈՒՄ ԸՍՏ ՔՍԵՆՈՓՈՆԻ

*Քսենոփոն Աթենացին հունական պատմագիտական մտքի ակնառու դեմքերից է: Նա ծնվել է մոտավորապես Ք. ա. 430 թ. Աթենքում, արիստոկրատական ընտանիքում: Սովորել է Սոկրատեսի դպրոցում, որտեղ և ձևավորվել են նրա հասարակական ու պատմագիտական հայացքները: Իր գործնական կյանքում ու պատմահայեցողությամբ Քսենոփոնը հանդես էր գալիս օլիգարխիական կարգերի պաշտպանների և աթենական դեմոկրատիայի կատաղի հակառակորդների դիրքերում: Երկար տարիներ պատմագիրը ապրել և ստեղծագործել է Աթենքից հեռու՝ Սպարտայում, որտեղ և գրել է իր հիմնական երկասիրությունները: Մահացել է 354 թ. Կորնթոսում: Քսենոփոնի գրչին են պատկանում «Անաբասիս», «Հունական պատմություն», «Սոկրատեսյան ստեղծագործություններ» («Սոկրատեսի արդարացումը», «Հուշեր Սոկրատեսի մասին», «Խրախճան»), «Տնային տնտեսության մասին», «Ագեսիլաոս», «Եկամուտների մասին», «Հիերոն», «Լակեդեմոնական պետական կառուցվածքը» և այլ երկասիրություններ:*

*Քսենոփոնի աշխատությունների մեջ իր ուրույն տեղն ունի «Կյուրոպեդիա» («Կյուրոսի դաստիարակությունը») երկը, որ նա գրել է 365-358 թթ. ընթացքում: Սա բարոյախոսական-քաղաքական վեպ է՝ նվիրված Աքեմենյանների աշխարհակալության հիմնադիր, պարսից թագավոր Կյուրոս Մեծին (550-529): Քսենոփոնի Աքեմենյան Կյուրոսը ոչ միայն հիանալի, գերազանց միապետ է, այլև անհատի գերագույն կատարելության մարմնացում:*

*Չնայած այս երկի ջատագովական միտումին և բարոյախոսական ուղղվածությանը, ինչպես նկատել են ուսումնասիրողները, այստեղ պատմական որոշակի նյութեր կան Հին Արևելքի երկրների մասին: Հատկապես արժեքավոր տեղեկություններ են պահպանվել Ք. ա. VI դ. Հայաստանի պատմության վերաբերյալ, մանավանդ հայ-մարական, հայ-պարսկական փոխհարաբերությունների, երկրի ներքին կյանքի և հասարակական հարաբերությունների մասին:*

*Քսենոփոնի «Կյուրոպեդիայից» ստորև բերված հատվածները քաղել ենք այդ երկասիրության հայերեն թարգմանությունից, որը կատարել է Ս. Մ. Կրկյաշարյանը (Քսենոփոն, Կյուրոպեդիա, Երևան, 2000):*

ՔՍԵՆՈՓՈՆ

ԿՅՈՒՐՈՊԵԴԻԱ

## Գիրք երկրորդ

### Գլուխ առաջին

6. «Ուրեմն դու[1], – ասաց Կյուրոսը[2],– ասում ես, թե թշնամիների հեծյալները մոտ վեց բյուր են, պելտաստները և աղեղնավորները՝ ավելի քան քսան բյուր: Ապա ասա, խնդրեմ, ինչքա՞ն է քո զորքի թիվը»:

«Մեդացի հեծյալները,– պատասխանեց Կյուաքսարեսը,– ավելի քան մեկ բյուր են, պելտաստները և աղեղնավորները մեր իսկ երկրից կլինեն մոտ վեց բյուր, իսկ մեր սահմանակից արմեններից. ասաց, կգան չորս հազար հեծյալ և երկու բյուր հետևակ»:

«Քո պատմելով,– ասաց Կյուրոսը,– մեր հեծյալների թիվը թշնամու հեծյալների մեկ քառորդից էլ պակաս է, իսկ հետևակը՝ թշնամու հետևակի կեսի չափ»:

## Գիրք երկրորդ

### Գլուխ չորրորդ

12. Հիշում եմ քիչ առաջ քեզանից լսեցի, թե արմենների թագավորը[3] քեզ այժմ արհամարհում է՝ լսած լինելով, որ թշնամիները գալիս են քեզ վրա, և նա ոչ զորք է ուղարկում, ոչ տուրք է վճարում, որը պարտավորվել էր տալ»:

«Իրոք, նա այդպես է վարվում, ո՛վ Կյուրոս,– ասաց Կյուաքսարեսը,– ուստի ես էս տատանվում եմ և չգիտեմ, ո՞րն է լավ. արշավել նրա դեմ և փորձել հարկադրելու նրան, թե՞ առայժմ թողնել նրան, որպեսզի մյուս թշնամիների վրա չավելացնենք նաև այս մեկին»:

13. Կյուրոսը դարձյալ հարցրեց. «Իսկ նրա բնակավայրերն արդյոք ամո՞ւր վայրերում են, թե՞ գուցե նաև մատչելի վայրերում»:

Կյուաքսարեսը պատասխանեց. «Բնակավայրերը շատ ամուր վայրեում չեն. ես դա չեմ մոռացել, սակայն կան լեռներ, որտեղ նա կարող է իսկույն ապաստանել և թաքցնել իր հետ տարած հարստությունը և իրեն ապահով զգալ, եթե որևէ մեկը մոտերքում նստած չպաշարի նրան, ինչպես արել էր իմ հայրը»[4]:

*14. Այնժամ Կյուրոսն այսպես ասաց. «Եթե կամենաս ինձ ուղարկել այնքան հեծելազորով, որքան բավական կլինի, կարծում եմ, որ դից օգնությամբ կստիպեմ նրան զորք ուղարկել և տուրք վճարել քեզ: Հույս ունեմ նաև, որ նա ավելի բարեկամ կդառնա մեզ, քան այժմ է»:*

*15. Եվ Կյուաքսարեսն ասաց. «Ես նույնպես հույս ունեմ, որ նրանք ավելի շուտ քեզ մոտ կգան, քան ինձ: Քանզի լսել եմ, որ նրա որդիներից ոմանք քեզ որսակից են եղել. ուստի, հավանաբար, դարձյալ կգան քեզ մոտ: Եթե նրանք հպատակվեն, ապա ամեն ինչ կլինի այնպես, ինչպես մենք կամենում ենք»:*



**Քսենոփոն**

*«Ի՞նչ ես կարծում,- ասաց Կյուրոսը:- Ավելի լավ չէ՞ այդ ամենը մենք որոշենք թաքուն»:*

*«Անշուշտ,- պատասխանեց Կյուաքսարեսը:- Այդպիսով, նրանցից որևէ մեկը հեշտությամբ կընկնի մեր ձեռքը և եթե որևէ մեկն ուզենա հարձակվել նրանց վրա, կարող կլինի նրանց բռնել հանպատրաստից»:*

*16. «Ուրեմն՝ լսիր, թե ի՞նչ կասեմ քեզ,- ասաց Կյուրոսը:- Ես հաճախ իմ բոլոր ընկերների հետ որս եմ արել քո և արմենների սահմանների մոտ և այստեղ եղած իմ հեծյալ ընկերներից ոմանց ևս վերցնելով, գնացել եմ այնտեղ»:*

*«Այժմ ևս,- ասաց Կյուաքսարեսը,- եթե նույնն անես, կասկած չես հարուցի: Իսկ եթե զորքը շատ ավելի թվա, քան այն, որով սովորաբար որսի էիր գնում, այդ արդեն կասկածելի կլինի»:*

*17. «Բայց կարելի է,- ասաց Կյուրոսը,- որևէ պատրվակ հնարել, այս դեպքում ոչ անհավատալի, և եթե որևէ մեկն այնտեղ լուր տարածի, որ ես ցանկանում եմ, մեծ որս անել, ապա ես կարող եմ բացահայտ քեզանից հեծյալներ խնդրել»:*

*«Շատ լավ ես առաջարկել,- ասաց Կյուաքսարեսը: Իսկ ես*

*կմերժեմ քեզ հեծյալներ տալ, բացի մի փոքր քանակից, իբր թե ինքս ցանկանում եմ գնալ դեպի Ասորեստանի սահմանների մոտ գտնվող ամրությունները: Իրականում էլ ես ուզում եմ գնալ այնտեղ՝ դրանք հնարավոր չափով առավել ամրացնելու համար: Իսկ երբ դու քո ունեցած զորքի հետ առաջանաս և արդեն երկու օր որս արած լինես, իմ մոտ հավաքվածներից քեզ բավականաչափ հեծյալ և հետևակ զորք կուղարկեմ, որոնց վերցնելով դու անհապաղ առաջ կշարժվես, իսկ ինքս ինձ մոտ մնացած մյուս զորքով կաշխատեմ ձեզանից հեռու չգտնվել, որպեսզի հարմար առիթին հանդես գամ»:*

*18. Եվ այսպես, Կյուաքսարեսը ամրությունների մոտ չտապով գումարեց հեծյալներին ու հետևակներին, և պարենի սայլերը նախօրոք ուղարկեց դեպի ամրությունները տանող ճանապարհով: Իսկ Կյուրոսը զոհ մատուցեց արշավանքի առթիվ և, մարդ ուղարկելով Կյուաքսերեսի մոտ, խնդրեց նրանից երիտասարդ հեծյալների: Իսկ Կյուաքսարեսը, թեև շատ շատերն էին ուզում գնալ, շատ զորք չտվեց նրան:*

*Երբ Կյուաքսարեսն արդեն իր հետևակ և հեծյալ զորքով բռնել էր դեպի ամրությունները տանող ճանապարհը, արմեն թագավորի դեմ Կյուրոսի արշավանքի առթիվ զոհանչանները նպաստավոր եղան: Ուստի և նա զորքը դուրս բերեց՝ իբր թե որսի համար պատրաստվելով:*

*19. Մինչ նա ճանապարհին էր, առաջին իսկ դաշտում նապաստակ հայտնվեց, բայց բարենշան մի արծիվ մոտ թռավ և, տեսնելով փախչող նապաստակին, վրա հասավ, խփեց նրան ու ճանկելով վեր բարձրացրեց և, տանելով մոտակա բլուրը, որսի հետ վարվեց այնպես, ինչպես ցանկանում էր: Այնժամ Կյուրոսն այս նշանը տեսնելով, ուրախացավ ու երկրպագեց Զևս Արքային և ասաց ներկաներին. «Մեր որսը, ով այրեր, աստուծո կամքով լավ կլինի»:*

*20. Երբ նրանք մոտեցան սահմանին, Կյուրոսը, ըստ իր սովորության, սկսեց որսը: Հետևակ և հեծյալ բազմությունը գնում էր նրա առջևից, որպեսզի գազաններին խրտնեցնի և դուրս հանի, իսկ հեծյալներից ու հետևակներից լավագույնները կանգնեցին որոշ հեռավորության վրա և դուրս եկած գազաններին դիմավորում և հալածում էին: Նրանք որսացին մեծ թվով կինճեր, եղնիկներ, քարայծեր և վայրի էշեր: Այս վայրերում այժմ ևս վայրի էշեր շատ են պատահում:*

*21. Որսն ավարտելուց հետո Կյուրոսը, մոտենալով արմենների սահմանին, ընթրեց: Հաջորդ օրը նա նորից որսի ելավ, մոտենալով լեռներին, ուր նա ձգտում էր գնալ: Ավարտելով որսը, նա դարձյալ*

*ընթրեց: Երբ իմացավ, որ Կյուաքսարեսի ուղարկած զորքը մոտենում է, նրանց մոտ Թաքուն մարդ ճամփեց և նրանց պատվիրեց ճաշել իրենից երկու փարսախ հեռավորության վրա: Դա նախազգուշություն էր, որպեսզի թշնամին չկռահի: Բայց նա հրամայեց, որ ընթրելուց հետո նրանց հրամանատարը ներկայանա իրեն: Ընթրիքից հետո Կյուրոսը իր մոտ կանչեց նաև վաշտապետներին: Երբ սրանք եկան, այսպես խոսեց.*

*22. «Բարեկամներ, արմեն Թագավորը առաջ Կյուաքսարեսին դաշնակից էր և հպատակ. իսկ այժմ, նկատելով, որ թշնամին արշավում է մեզ վրա, արհամարհում է և ոչ զորք է ուղարկում մեզ, և ոչ էլ տուրք վճարում: Այժմ մենք եկել ենք, եթե կարողանանք, նրան որսալու: Ուստի ինձ Թվում է, մենք այսպես կանենք: Դու, Քրյուսանտաս, ինչպես հարկն է հանգստանալուց հետո, վերցրու մեզ հետ եկող պարսիկների կեսին, գնա լեռնային ճանապարհով և գրավիր լեռները, որտեղ, ինչպես պատմում են, նա ապաստանում է վտանգի դեպքում: Ուղեցույցներ ես քեզ կտամ: 23. Ասում են, որ այդ լեռները անտառապատ են, ուստի և հույս կա, որ չեք նկատվի: Այսուհանդերձ, զորքի առջևից ուղարկիր արագընթաց այրերի, որոնք Թվով ու զգեստով նման լինեն ավազակների: Սրանք արմենների պատահելիս պետք է բռնեն նրանց և արգելք հանդիսանան, որպեսզի չկարողանան լուր տանել, իսկ նրանց ում հնարավոր չլինի բռնել, պետք է հեռու քշեն, որպեսզի չկարողանան տեսնել քո ամբողջ զորքը, այլ կարծեն, որ պատահել են ավազակների: 24. Դու,– ասաց,– այսպես գործիր. իսկ ես լուսաբացին, վերցնելով հետևակի կեսը և ամբողջ հեծելազորը, դաշտի միջով կգնամ ուղիղ դեպի Թագավորի նստավայրը: Եվ եԹե նա դիմադրի, պարզ է, որ հարկ կլինի կռվել, իսկ եԹե նա դաշտից նահանջի, պարզ է, որ հարկ կլինի հետամտել: ԵԹե փախչի դեպի լեռները. այնտեղ արդեն քո գործը կլինի՝ քո ձեռքն ընկնողներից ոչ մեկին բաց չԹողնել: 25. Մտածիր, որ ինչպես որսի ժամանակ, մենք կլինենք որս անողները, իսկ դու ցանցերի մոտ հսկողը: Ուստի հիշիր այն, որ պետք է շտապ փակել փախուստի ելքերը նախքան որսը կշարժվի, իսկ ելքերի մոտ գտնվողները պետք է աննկատ մնան, եԹե ուզում են, որ մոտեցող գազանները ետ չդառնան: 26. Այնուամենայնիվ, ով Քրյուսանտաս,– ասաց նա,– մի կրկնիր այն սխալը, ինչ մի ժամանակ արել ես որսով հրապուրված. դու ամբողջ գիշերն անկացրել ես անքուն: Այժմ դու պետք է քո մարդկանց Թույլ տաս չափավոր հանգստանալու, որպեսզի դիմանան անքնուԹյանը: 27. Քանի որ ուղեցույցներ չունենալու դեպքում դու,*

*այդուհանդերձ, չես մոլորվում լեռներում, այլ հետապնդում ես գազանին նրա տարած ճանապարհով, ապա այժմ ևս մի գնա անանց վայրերով, այլ պահանջիր քո ուղեցույցներից, որ քեզ տանեն եթե ոչ առավել լայն, գոնե առավել հարմար ճանապարհով: Առավել հարմար ճանապարհը զորքի համար առավել կարճն է միաժամանակ: 28. Ու թեև դու սովոր ես լեռներն ի վեր վազել, քո զորքերին մի տար վազքով, այլ չափավոր քայլքով առաջ ընկիր, որպեսզի զորքը կարողանա քեզ հետևել: 29. Լավ կլինի նաև, որ առավել ուժեղներից և առավել պատրաստակամներից ոմանք քո հրամանով երբեմն կանգ առնեն և մյուսներին ոգևորեն, իսկ երբ զորասյունը անցնի նրանց առջևով, բոլորի համար խթան կհանդիսանա, եթե նրանց տեսնեն քայլողների կողքով վազելիս»:*

*30. Քրյուսանտասը, լսելով այդ ամենը և հպարտ զգալով Կյուրոսի հանձնարարության համար, վերցրեց ուղեցույցներին ու մեկնեց: Նա անհրաժեշտ հրամանները տվեց նրանց, ովքեր գնալու էին իր հետ, և գնաց հանգստանալու: Երբ քնեցին այնքան, ինչքան բավական էր թվում, նա ուղևորվեց դեպի լեռները:*

*31. Իսկ Կյուրոսը լուսաբացին բանբեր ուղարկեց արմեն թագավորի մոտ՝ պատվիրելով ասել նրան հետևյալը. «Ով արմեն, Կյուրոս հրամայում է քեզ այնպես անել, որ ինչքան կարելի է շուտ բերես և՛ տուրքը, և՛ զորքը: Եթե նա հարցնի, թե ես որտե՞ղ եմ, ճիշտն ասա, թե՝ սահմանի վրա: Իսկ եթե հարցնի, թե արդյո՞ք ինքս ևս գալիս եմ, դարձյալ ճիշտն ասա, թե՝ չգիտես: Եվ եթե ուզենա իմանալ, թե որքա՞ն ենք, ապա խորհուրդ տուր՝ ուղարկել մեկին և իմանալ»:*

*32. Այսպիսի հանձնարարությամբ ուղարկեց դեսպանին՝ են-թադրելով, որ այսպես առավել բարեկամական կլինի, քան եթե գնար առանց նախազգուշացնելու: Իսկ ինքը, կարգավորելով զորքը լավագույն կերպով ճանապարհը անցնելու և, հարկ եղած դեպքում, նաև կռվելու համար, ճանապարհվեց: Զինվորներին նախապես հրամայեց, որ ոչ ոքի հանդեպ անարդար չվարվեն, և եթե արմեններից որևէ մեկը պատահի, քաջալերեն նրան և հայտնեն, որ ցանկացողները ծախու ապրանքները բերեն ուր որ իրենք գտնվեն, եթե նրանք կամենում են ծախել կամ ուտելիք, կամ ըմպելիք:*

## Գիրք երրորդ

### Գլուխ առաջին

1. Կյուրոսն այս գործերով էր զբաղված: Իսկ արմենների թագավորը, երբ լսեց բանբերից Կյուրոսի հանձնարարությունները, տագնապեց՝ հասկանալով, որ անարդար է վարվել և տուրքը չվճարելով և զորքը չուղարկելով. առավել վախեցավ, որ կնկատվի, թե ինքն սկսել էր ամրացնել արքայանիստը, որպեսզի կարողանար դիմադրություն ցույց տալ: 2. Այս բոլորի պատճառով անհանգստացած՝ նա միաժամանակ ոմանց ուղարկեց տարբեր կողմեր զորք հավաքելու, իսկ կրտսեր որդուն՝ Սաբարիսին[5] և ավագ որդու ու իր կանանց, ինչպես նաև դուստրերին, ուղարկեց լեռները: Նրանց հետ ուղարկեց նաև զարդերն ու առավել արժեքավոր իրերը՝ տալով նրանց ուղեկիցներ: Միևնույն ժամանակ նա ուղարկեց մարդկանց, որպեսզի լրտեսեն, թե ի՞նչ է անում Կյուրոսը, և սկսեց դասակարգել իր մոտ եկող արմեններին: Շուտով եկան ուրիշները ևս և ասացին, որ արդեն մոտ է և ինքը՝ Կյուրոսը: 3. Այնժամ նա այլևս չհամարձակվեց մարտի բռնվել և նահանջեց: Արմենները՝ տեսնելով՝ որ նա այդպես է անում, սկսեցին փախչել իրենց տները, իրենց ունեցածը կամենալով հեռու տանել:

Երբ Կյուրոսը տեսավ, որ դաշտը լեցուն է փախչողներով և հեռացող ձիավորներով, սուրհանդակներ ուղարկեց հայտնելու, որ տեղում մնացողների դեմ ինքը ոչ մի թշնամանք չունի, բայց եթե որևէ մեկին բռնի փախչելիս, ապա նրա հետ կվարվի որպես թշնամու: Այսպիսով, նրանից շատերը մնացին, բայց ոմանք էլ հեռացան թագավորի հետ:

4. Արդ, երբ կանանց հետ առաջ գնացողները դեմ առան լեռան վրա գտնվողներին, իսկույն աղաղակ բարձրացրին և նրանից շատերը փախչելիս բռնվեցին: Ի վերջո բռնվեցին նաև թագավորի որդին և կանայք ու դուստրերը, ինչպես նաև այն հարստությունը, ինչ իրենց հետ տանում էին:

Թագավորը, երբ իմացավ պատահածը, տատանվում էր ու չգիտեր՝ ո՞ւր գնալ և ապաստանեց ինչ-որ բլրի վրա: 5. Այդ տեսնելով Կյուրոսը բլուրը պաշարեց իր մոտ եղած զորքով, և մարդ ուղարկեց Քրյուսանտասի մոտ, հրամայելով՝ պահակախումբը թողնել լեռան վրա և գալ իր մոտ: Այսպիսով զորքը գումարվեց Կյուրոսի մոտ:

Կյուրոսը սուրհանդակ ուղարկեց արմենի մոտ՝ հարցնելով. «Ասա

*ինձ, ով արմեն, արդյոք ուզում ես այնտեղ մնալով քաղցի ու ծարավի հե՞տ կռվել, թե իջնելով դաշտ մեզ հետ կռվել»:*

*Ամենը պատասխանեց, որ դրանցից և ոչ մեկի հետ նա չի ուզում կռվել: 6. Կյուրոսը նորից մարդ ուղարկելով, հարցրեց. «Այդ դեպքում ինչո՞ւ ես այդտեղ նստել և ցած չես իջնում»:*

*«Որովհետև,- պատասխանեց նա,-դժվարանում եմ անելիքս վճռել»:*

*«Դժվարանալու ոչինչ չկա, - ասաց Կյուրոսը, - քանզի կարող ես ցած իջնել դատվելու համար»:*

*«Իսկ ո՞վ կլինի դատավորը», - հարցրեց թագավորը:*

*«Պարզ է, որ նա, ում աստված հնարավորություն է տվել առանց դատ անելու ևս վարվել քեզ հետ՝ ինչպես կամենում է»:*

*Այնժամ արմենը՝ հասկանալով, որ դա անհրաժեշտ է, ցած իջավ: Իսկ Կյուրոսը նրան և մյուս բոլորին տեղավորելով մեջտեղում, ինքը բանակեց, քանի որ նրա ամբողջ զորքը արդեն եկել էր:*

*7. Այդ ընթացքում ճանապարհորդությունից վերադարձավ արմենի ավագ որդի Տիգրանը[6], որը ժամանակին եղել էր Կյուրոսի որսընկերը: Լսելով կատարվածը, նա իսկույն գնաց Կյուրոսի մոտ, ինչպես որ կար: Տեսնելով իր հորը, մորը, եղբայրներին և իր կնոջը՝ գերի վերցված, նա, բնական է արտասվեց: 8. Իսկ Կյուրոսը, տեսնելով նրան, բարեկամական ոչինչ չարտահայտեց, այլ միայն ասաց. «Ճիշտ ժամանակին եկար, որպեսզի ներկա լինես և լսես հորդ դատը»:*

*Եվ իսկույն իր մոտ կանչեց պարսից և մեդացիների հրամանատարներին, հրավիրեց նաև ներկա գտնվող պատվավոր արմեններին[7]. նա չհեռացրեց նաև կառքերի մեջ գտնվող կանանց, այլ թույլ տվեց, որ լսեն:*

*9. Ամեն ինչ լավ կարգավորելուց հետո նա սկսեց այսպես խոսել. « Ով արմեն, նախ քեզ խորհուրդ եմ տալիս դատի ժամանակ ճիշտն ասել, որպեսզի խուսափես դյուրավ ատելի դառնալուց: Լավ իմացիր, որ կեղծիքի մեջ բացահայտվելը ամենամեծ արգելքն է ներողամտության համար: Բացի այդ,- ասաց նա,- քո որդիները, այս կանայք և ներկա գտնվող արմենները գիտեն այն ամենը, ինչ դու կատարել ես: Եթե նրանք նկատեն, որ դու այլ բաներ ես ասում և ոչ թե այն, ինչ եղել է, ապա նրանք կմտածեն, թե ինքդ քեզ դատապարտում ես ամենածանր պատիժները կրելու, եթե ես ճշմարտությունն իմանամ»:*

*«Բայց հարցրու,- ասաց թագավորը,- ով Կյուրոս, ինչ կամենում ես, իսկ ես կասեմ ճշմարիտը: Դրանից հետո ինչ ուզում է թող լինի»:*

*10. Կյուրոսն ասաց. «Այդ դեպքում, ասա. երբևէ դու կռվե՞լ ես իմ մոր Հոր՝ Աստյուագեսի[8] և մյուս մեդացիների դեմ»:*

*«Այո»,- պատասխանեց:*

*«Պարտվելով նրանից, համաձայնվե՞լ ես տուրք վճարել, նրա հետ պատերազմի գնալ, ուր որ նա Հրամայի, և բերդեր չունենալ»:*

*«Այդպես է»:*

*«Հապա ինչո՞ւ այժմ տուրք չես վճարում, զորք չես ուղարկում և սկսել ես ամրություններ կառուցել»:*

*«Ես ազատության էի ձգտում. քանզի լավ էի համարում, որ ինքս ազատ լինեմ, և որդիներիս ազատություն թողնեմ»:*

*11. «Անշուշտ,- ասաց Կյուրոսը,- լավ բան է կռվելը, երբ մարդ չի ուզում երբևէ ստրուկ դառնալ: Սակայն, եթե որևէ մեկը, երբ պարտվել է պատերազմում կամ մի որևէ այլ կերպ ստրկացվել է, բացահայտվի այն բանում, որ փորձել է փախչել տերերից, նրան առաջինը դու ինքդ լա՞վ մարդ և գեղեցի՞կ գործ կատարող կհամարես, թե՞ կդիտես որպես անարդար գործ կատարողի և, բռնելու դեպքում՝ կպատժես»:*

*«Կպատժեմ,- ասաց թագավորը,- չէ՞ որ դու թույլ չես տալիս ստել»:*

*12. «Այժմ, - ասաց Կյուրոսը, - պարզ պատասխանիր, ամեն մի հարցին առանձին: Եթե որևէ իշխան պատահի, որ քո հանդեպ հանցանք գործի, արդյոք թույլ կտաս, որ նա՞ իշխի, թե՞ փոխարենը մեկ ուրիշի կկարգես»:*

*«Մեկ ուրիշին կկարգեմ»:*

*«Իսկ եթե նա շատ դրամ ունենա, թույլ կտաս որ հարստանա՞, թե՞ նրան աղքատ կդարձնես»:*

*«Եթե դրամ ունենա, - ասաց,- կվերցնեմ»:*

*«Իսկ եթե իմանաս, որ նա թշնամիների կողմն է անցել, ի՞նչ կանես»:*

*«Կսպանեմ,- պատասխանեց: - Ո՞րն է գերադասելի. մեռնել՝ բացահայտելով, որ սուտ եմ խոսում, թե՞ մեռնել՝ ճիշտ ասելով»:*

*13. Այն ժամ նրա որդին՝ այս ամենը լսելով, պոկեց խույրը գլխից և սկսեց զգեստը պատառոտել, իսկ կանայք աղաղակելով ճանկռոտում էին երեսները՝ կարծելով, որ արդեն կործանման էր մատնվել իրենց հայրը և կորչում էին իրենք ևս: Իսկ Կյուրոսը Հրամայեց լռել և ասաց. «Թող այդպես լինի, սրանք են քո դատավճիռները, ով արմեն: Բայց այս ամենից հետո, ինչ խորհուրդ կտաս մեզ անել»:*

*Արմենը լռեց՝ դժվարանալով վճռել, թե արդյոք խորհուրդ տա*

*Կյուրոսին՝ սպանե՞լ իրեն, թե՞ առաջարկի հակառակն այն ամենի, ինչ ինքն ասաց, թե կկատարեր: 14. Իսկ նրա որդի Տիգրանը հարցրեց Կյուրոսին. «Ասա ինձ, ով Կյուրոս, քանի որ հայրս, ըստ երևույթին, դժվարանում է, արդյոք կարո՞ղ եմ ես նրա մասին այնպիսի խորհուրդ տալ քեզ, որը կարծում եմ, քեզ համար կլինի լավագույնը»:*

*Իսկ Կյուրոսը, դեռ այն ժամանակից, երբ Տիգրանի հետ որսի էր գնում, իմացել էր, որ նա աշակերտում էր ինչ-որ իմաստասերի*[9]*, որը հիացնում էր Տիգրանին. շատ ուզեց լսել, թե ի՞նչ է նա ասելու. ուստի հրամայեց, որ համարձակորեն ասի այն, ինչ մտածում է:*

*15. «Արդ,- ասաց Տիգրանը,- եթե դու հավանություն ես տալիս այն ամենին, ինչ հայրս մտադիր էր անել կամ արդեն արել է, ես քեզ խորհուրդ կտամ նմանվել նրան. իսկ եթե դու գտնում ես, որ նա ամեն ինչում սխալվել է, ապա խորհուրդ կտամ չնմանվել»:*

*«Ուրեմն,- ասաց Կյուրոսը,- եթե ես արդար գործեմ, ապա բոլորովին չեմ նմանվի անարդար մարդու»:*

*«Այդ ճշմարիտ է»:*

*«Ուրեմն, եթե հետևենք քո դատողությանը, ապա պետք է պատժել քո հորը, քանի որ արդար է հանցանք գործած մարդուն պատժելը»:*

*«Բայց ասա, ով Կյուրոս. որևէ պատիժ սահմանելիս, դու ցանկանում ես, որ այն քեզ օգո՞ւտ բերի, թե՞, ընդհակառակը, վնասի»:*

*«Այդպիսի դեպքում ես ինձ պատժած կլինեի»:*

*16. «Բայց դու,- ասաց Տիգրանը,- մեծապես կտուժես, եթե քո հպատակներին սպանես, մինչդեռ նրանց կենդանի մնալու դեպքում դու մեծ շահ կունենաս»:*

*Կյուրոսն ասաց. «Բայց ի՞նչ արժեք կարող են ունենալ այն մարդիկ, որոնք բռնված են կատարած հանցանքի համար»:*

*«Նրանք, իմ կարծիքով, արժեքավոր կլինեն, երբ դառնան ողջամիտ: Քանզի, ով Կյուրոս, ինձ թվում է, որ առանց ողջամտության մնացած բոլոր առաքինությունները անարժեք են դառնում: Եվ ի՞նչ օգուտ ուժեղ ու քաջարի մարդուց, (կամ հեծելազորից), ի՞նչ օգուտ հարուստից և քաղաքի հզորից, եթե նա ողջամիտ չէ: Բայց ողջամիտ ամեն մի բարեկամ օգտակար է և ողջամիտ ամեն մի ծառա՝ լավ»:*

*17. «Ուրեմն ի՞նչ,- պատասխանեց Կյուրոսը:- Ասում ես, որ քո հայրը մեկ օրվա ընթացքում անմիտ մարդուց դարձավ ողջամի՞տ»:*

*«Այո, այդպես եմ կարծում»:*

*«Ուրեմն՝ դու ասում ես, որ ողջամտությունը հոգեվիճակ է, ինչպես տխրությունը, և ոչ թե սովորելու առարկա: Բայց չեմ կարծում,*

*որ մարդ անմիտ լինելուց կարող է իսկույն դառնալ ողջամիտ, քանի որ նա մինչ այդ պետք է դառնա խելացի»:*

*18. «Իսկ ինչո՞ւ, ով Կյուրոս: Մի՞թե չես պատահել մարդու, որն անմտորեն հարձակվել է իրենից առավել հզորի վրա, բայց պարտվելուց հետո հրաժարվել է իր անմտությունից: Եվ հետո, մի՞թե երբեք չես տեսել, որ մի պետություն պատերազմել է մյուսի դեմ և, պարտվելուց հետո, իսկույն հոժարել է հնազանդվել հաղթողին»:*

*19. «Քո հոր ի՞նչ պարտության մասին ես խոսում,- ասաց Կյուրոսը,- որը նրան, ինչպես դու պնդում ես, դարձրել է ողջամիտ»:*

*«Այն մեկի,-պատասխանեց Տիգրանը, - որի համար, Զեսը վկա, նա իր հոգում խորապես զղջացել է: Զգտելով ազատության, նա դարձավ առավել ստրուկ, քան երբևիցե: Այն, ինչ մտածել էր թաքուն պահել, դարձավ հայտնի, և դիմադրություն ցույց տալը նրա համար վերածվեց պարտության: Նա ընդունում է, որ երբ դու կամեցար խորամանկությամբ գերազանցել իրեն, այնպես գերազանցեցիր, ինչպես մարդ մոլորեցնի կույրերին, խուլերին կամ լիովին զգայազուրկներին: Երբ դու մտածեցիր, որ պետք է գաղտնի գործել, նա արդեն զգում է, որ դու այնպես գաղտնի գործեցիր, որ այն ամրացված վայրերը, որոնք նա համարում էր ապահով ապաստան, դու դարձրիր նրա բանտարկության վայր: Եվ արագությամբ դու այնքան գերազանցեցիր նրան, որ կարողացար մեծ զորքով հասնել ավելի շուտ, քան նա կկարողանար իր ուժերը գումարել»:*

*20. «Ուրեմն քեզ թվում է,- ասաց Կյուրոսը,- որ նման պարտությունը և իր նկատմամբ այլոց գերազանցությունն ընդունելը կարող են մարդուն ողջամի՞տ դարձնել»:*

*«Շատ ավելի, քան պատերազմում պարտվելը,- ասաց Տիգրանը: - Քանզի կռվում պարտվածը կարող է հուսալ, որ մարզելով իր մարմինը, կարող է վերսկսել կռիվը: Եվ առավել ուժեղ հակառակորդից պարտություն կրած պետությունները մտածում են նոր դաշնակիցներ գտնելու և պատերազմը վերսկսելու հնարավորության մասին: Իսկ մարդիկ, ընդհակառակը, հաճախ, առանց հարկադրանքի, հնազանդվում են նրան, ում գերազանցությունը պատրաստ են ընդունելու»:*

*21.«Դու,- ասաց Կյուրոսը,- կարծում ես, որ ամբարտավանները չեն ուզում իրենցից առավել ողջամիտ որևէ մեկին ճանաչել, նույնը և գողերը՝ ոչ գողերին, ստախոսները՝ ճշմարտախոսներին, նաև անարդարները՝ արդարներին: Չգիտե՞ս որ այժմ էլ քո հայրը մեզ խաբեց և խախտեց մեզ հետ ունեցած դաշինքը, թեև գիտեր, որ մենք*

*ոչնչով չենք խախտել Աստյուագեսի հետ կնքած դաշինքը»:*

*22. «Բայց ես չեմ ասում, որ սոսկ այլոց գերազանցությունն ընդունելը մարդկանց կդարձնի ողջամիտ՝ առանց հաշիվ տալու գերազանցողի առաջ, ինչպես այժմ իմ հայրն է տալու»:*

*«Բայց քո հայրը,– ասաց Կյուրոսը,– դեռևս ոչ մի պատիժ չի կրել. սակայն հաստատապես վախենում է ամենածանր պատժից»:*

*23. «Բայց դու մտածե՞լ ես,– ասաց Տիգրանը,– թե ի՞նչը կարող է առավել ընկճել մարդուն, քան սարսափը: Դու չգիտես, որ նրանք, ովքեր թրով խոցվել են, իսկ թուրը պատժի առավել ուժեղ գործիք է համարվում, այդուհանդերձ, կամենում են դարձյալ կռվել իրենց թշնամու դեմ. մինչդեռ ուժեղ վախ զգացողները չեն համարձակվում թշնամու վրա աչք բարձրացնել, նույնիսկ այն դեպքում, երբ սա առիթ է տալիս»:*

*«Ուրեմն դու,– ասաց Կյուրոսը,– պնդում ես, որ պատժի սարսափն առավել մեծ է մարդկանց համար, քան ինքը՝ պատիժը»:*

*24. «Դու էլ գիտես,– ասաց Տիգրանը,– որ ես ճիշտ եմ ասում: Քանզի գիտես, որ ովքեր վախենում են հայրենիքից վտարվելուց և ովքեր պատերազմի դեպքում վախենում են պարտվելուց, իրենց վեհերոտ են պահում: Այդպես նաև նավարկելիս՝ նավարկությունից վախեցողները, ինչպես և ստրկության մեջ կամ բանտ ընկնելուց վախեցողները ահից ոչ հաց են կարողանում ուտել, ոչ իսկ քնել: Մինչդեռ արդեն վտարանդիները, պարտվածները և արդեն ստրկացվածները կարողանում են և ուտել, և քնել՝ նույնիսկ բարեբախտներից էլ լավ: 25. Թե ինչքան ծանր բան է վախը, կարելի է ավելի պարզ տեսնել նաև հետևյալից. շատերը վախենալով գերի ընկնելու դեպքում սպանվելուց, նախապես ինքնասպան են լինում. ոմանք՝ նետվելով անդունդը, մյուսները՝ կախվելով, ոմանք էլ՝ մորթելով իրենց: Վախն այսպես է հարվածում հոգուն ավելի ուժգին, քան ուրիշ չարիքներ: Իսկ իմ հոր վիճակը,– շարունակեց նա,–ինչպիսի՞ն կլինի, երբ նա վախենում է ոչ միայն իր, այլև իմ, իր կնոջ և իր բոլոր որդիների կյանքի համար»:*

*26. Իսկ Կյուրոսը պատասխանեց. «Ինձ նույնպես հավանական է թվում, որ նա այժմ այդպես է տրամադրված: Ինձ թվում է, որ միևնույն մարդուն հատուկ է հաջողության դեպքում հանդուգն լինել, իսկ ձախողման դեպքում խղճուկ, և նա, եթե դարձյալ ոտքի կանգի, նորից կմեծամտանա և տհաճություններ կպատճառի»:*

*27. «Բայց, իրոք, Զևսը վկա, ով Կյուրոս,– ասաց Տիգրանը,– մեր սխալները կարող են քեզ առիթ տալ մեզ չվստահելու համար: Բայց դու հնարավորություն ունես բերդեր կառուցել, գրավել ամրություն-*

ներ և վերցնել հավատարմության ցանկացած գրավականը: Եվ մենք չենք վշտանա այդ ամենից. քանզի կհիշենք, որ այդ ամենի համար մենք ենք մեղավոր: Իսկ եթե դու մեր երկրի իշխանությունը հանձնես այնպիսիններին, որոնք ոչնչով մեղավոր չեն քո առաջ և ցույց տաս, որ նրանց կասկածում ես, ապա նրանք, գուցե, թեև դու նրանց լավություն ես արել, քեզ բարեկամ չհամարեն: Իսկ եթե դու, վախենալով նրանց ատելությունը հրահրելուց, նրանց վրա լուծ չդնես, որպեսզի հանդուգն գործեր չձեռնարկեն, հավանական է՝ նրանց խելքի բերելու համար ստիպված կլինես դիմելու ավելի խիստ միջոցների, քան մեր նկատմամբ»:

28. «Իրոք, աստված վկա, – ասաց Կյուրոսը,– ես չէի ցանկանա այնպիսի ծառաներ ունենալ, որոնք, ես գիտեմ, ինձ կծառայեին հարկադրաբար: Ես կարծում եմ, որ ինձ համար ավելի հեշտ կլինի հանդուրժել այն մարդկանց սխալները, որոնք նվիրվածությամբ և բարեկամությամբ են կատարում իրենց պարտքը, քան այն մարդկանց ատելությունը, որոնք կատարում են հարկադրաբար»:

Տիգրանը նրան պատասխանեց. «Բայց ո՞ւմ մոտ դու կարող ես գտնել այնպիսի բարեկամություն, ինչպիսին այժմ կգտնես մեզ մոտ»:

«Ես կարծում եմ,– ասաց Կյուրոսը,– որ այն կարող եմ գտնել նրանց մոտ, ովքեր երբեք ինձ թշնամի չեն եղել, եթե կամենամ նրանց այնպիսի բարեգործություն կատարել, ինչպիսին դու այժմ խնդրում ես»:

«Բայց, ով Կյուրոս,– ասաց Տիգրանը,– ներկա պայմաններում արդյոք կա՞ որևէ մարդ, ում կարող ես այնպիսի մեծ բարեգործություն անել, ինչպես իմ հայրն է: Եթե դու որևէ մեկին, որը քեզ երբևէ չարիք չի պատճառել, շնորհես նրա կյանքը, նա քո հանդեպ շնորհակալական ի՞նչ զգացումներ կարող է ունենալ: Եվ հետո, ո՞վ քեզ ավելի կսիրի. նա՞, ում չես զրկել որդիներից ու կնոջից, թե՞ նա, ով գիտակցում է, որ դու իրավունք ունեիր զրկել նրան: Եվ դու գիտե՞ս ուրիշ մարդկանց, որոնք վշտանային առավել, քան մենք, եթե մեր հայրը չստանա արմենների թագավորությունը: Ուստի պարզ է նաև, որ նա, ով թագավորությունից զրկվելով, մեծագույն վիշտ է ապրում, այն վերստին ստանալով քո հանդեպ կլցվի մեծագույն երախտագիտությամբ:

30. Եվ եթե դու մտածում ես այն մասին, թե քո գնալուց հետո ո՞ւմ թողնես մեր իշխանությունը, որպեսզի հնարավորին չափ պակաս հուզումներ լինեն, ապա մտածիր, թե ո՞ր դեպքում առավել խաղաղ կլինի. նոր իշխանության տա՞կ, թե՞ նախկինը պահպանելու դեպքում: Եվ եթե դու մտածում ես երկրից հնարավորին չափ ավելի

*մեծաթիվ զորք դուրս բերել, ապա ո՞վ, քո կարծիքով, կկարողանա այդ գործն ավելի լավ անել, քան նա, ով այդ բազմիցս կատարել է: Իսկ եթե դու դրամի կարիք ունենաս, ապա ո՞վ կարող է այն հայթայթել քեզ համար ավելի արագ, քան նա, ով գիտի երկիրը և ունի բոլոր միջոցները: Առաքինի Կյուրոս, զգուշացիր, չլինի թե մեզ հետ դաժանաբար վարվելով՝ դու ինքդ քեզ ավելի վնասես, քան կարող էր քեզ վնասել իմ հայրը»:*

*Տիգրանն այսպես խոսեց: 31. Լսելով այդ, Կյուրոսը խիստ ուրախացավ, քանզի մտածում էր, որ ամեն ինչ եղավ այնպես, ինչպես խոստացել էր Կյուաքսարեսին՝ թե կանի: Նա հիշեց, որ ասել էր, թե ենթադրում է արմենների թագավորին ավելի լավ բարեկամ դարձնել, քան առաջ: Այնուհետև նա արմենին հարցրեց. «Եթե այս հարցում ես քեզ հավատ ընծայեմ, ասա ինձ,  ով արմեն. դու ինչքա՞ն զորք կուղարկես ինձ հետ և ինչքա՞ն դրամ կհատուցես պատերազմի համար»:*

*32. Այս խոսքերին արմենը  պատասխանեց. «Առավել պարզը և արդարացին կլինի այն, որ ասեմ և ցույց տամ իմ ունեցած ամբողջ զորական ուժը, իսկ դու այդ տեսնելով՝ որոշես, թե որքան զորք պետք է վերցնես և որքան թողնես երկրի պաշտպանության համար: Նույնպես և իմ հարստության նկատմամբ արդարացի է, որ ես ցույց տամ քեզ իմ ամբողջ ունեցածը. իսկ դու  ինքդ որոշես, թե դրանից որքան կուզենաս առնել և որքան՝ թողնել»:*

*33. Արմենն ասաց. «Արմենների հեծելազորը մոտ ութ հազար է, հետևակը՝ մոտ չորս բյուր. իսկ իմ հարստությունը այն գանձերի հետ, որ թողել է հայրս, արծաթով հաշված, ավելի քան երեք հազար տաղանդ»[10]:*

*34. Կյուրոսը չհապաղեց ու ասաց. «Քանի որ քո դեմ պատերազմում են քո հարևան խալդյայները[11], ինձ ուղարկիր զորքիդ կեսը. իսկ դրամից՝ վճարելիք  հիսուն տաղանդի փոխարեն, քանի որ չես վճարել այն, Կյուաքսարեսին կվճարես կրկնակին: Ինձ էլ,- ասաց նա,- փոխարինաբար կտաս հարյուր տաղանդ: Իսկ ես խոստանում եմ քեզ, եթե աստված հաջողություն տա, պարտքով ինձ տվածիդ փոխարեն առավել արժեքավոր կերպով  հատուցել և կամ վճարել փողը, եթե կարողանամ. իսկ եթե չկարողանամ և պարզվի, որ ի վիճակի չեմ վճարելու, կարծում եմ, որ իրավացի չի լինի ինձ համարել անարդար»:*

*35. «Հանուն աստվածների, ով Կյուրոս,- ասաց արմենը,- այդպես մի խոսիր, ապա թե ոչ՝ ինձ կվհատեցնես: Սակայն իմացիր, որ այն, ինչ այստեղ թողնես, ոչ պակաս չափով քոնն է, քան այն, ինչ տանես քեզ հետ»:*

*«Դիցուք,- ասաց Կյուրոսը:- Իսկ կնոջդ ետ ստանալու համար ինչ-քա՞ն դրամ կտաս ինձ»:*

*«Ինչքան կարողանամ»,- պատասխանեց:*

*«Իսկ ինչքա՞ն՝ որդիներիդ ստանալու համար»:*

*«Նրանց համար ևս կտամ՝ ինչքան կարողանամ»:*

*«Այդ դեպքում,- ասաց Կյուրոսը,- դա կկազմի քո ունեցածի կրկնակին: 36. Իսկ դու, Տիգրան, ասա ինձ, ինչքա՞ն կվճարես կնոջդ ետ ստանալու համար»:*

*Տիգրանը, որը նոր էր ամուսնացել և շատ էր սիրում կնոջը, ասաց. «Ես, ով Կյուրոս, նույնիսկ իմ կյանքը կտամ, որպեսզի նա երբեք ստրուկ չդառնա»:*

*37. «Ուրեմն դու, - ասաց Կյուրոսը,- տար կնոջդ. ես չեմ համարում, որ նա գերի է բռնվել, քանզի դու երբեք չես լքել մեզ: Դու ևս, ով արմեն, տար կնոջդ և զավակներիդ առանց փրկագնի, որպեսզի իմանաս, որ քեզ մոտ իրենք ազատ են վերադառնում: Իսկ այժմ,- ասաց,- ճաշեցեք մեզ մոտ և ճաշելուց հետո գնացեք ուր կամենում եք»: Այդպիսով նրանք մնացին:*

*38. Ճաշելուց հետո, երբ բոլորը ցրվում էին, Կյուրոսը հարցրեց. «Ասա ինձ, ով Տիգրան, ո՞ւր է այն այրը, որը մեզ հետ որսի էր գալիս և որով դու, ինձ թվում էր, շատ հիացած էիր»:*

*«Նրան իմ հայրն սպանեց»,- պատասխանեց Տիգրանը:*

*«Ի՞նչ հանցանքի մեջ էր նրան բռնել»:*

*«Հայրս ասաց,- պատասխանեց Տիգրանը,- որ նա ինձ այլասերում է. մինչդեռ նա, ով Կյուրոս, այնքան բարի և առաքինի էր, որ մահապատժի ենթարկվելուց առաջ ինձ իր մոտ կանչեց և ասաց. «Մի զայրացիր քո հոր վրա, Տիգրան, որ ինձ սպանում է. նա այդ անում է ոչ թե չարամտությամբ, այլ անգիտության պատճառով: Եթե մարդիկ անգիտությամբ որևէ սխալ են գործում, ապա, կարծում եմ, որ նրանք այդ անում են ակամա»:*

*39. Այդ լսելով, Կյուրոսն ասաց. «Ափսո՜ս այդ այրին»:*

*Իսկ արմենների թագավորն այսպես խոսեց. «Ով Կյուրոս, մի՞թե այր մարդը, իր կնոջ մոտ սիրեկան տեսնելով, սպանում է նրան սոսկ այն պատճառով, որ նա իր կնոջը մղել է անխոհեմ արարքի: Իրականում սպանության պատճառն այն համոզմունքն է, որ սիրեկանը զրկում է ամուսնուն իր կնոջ սիրուց: Այս պատճառով էլ այր մարդիկ իրենց կանանց սիրեկանին դիտում են իբրև թշնամի: Այդպես էլ ես նախանձում էի այդ մարդուն, որը կարողացել էր, ինչպես ինձ թվում էր, ստիպել իմ որդուն՝ իրեն ավելի հարգել, քան ինձ»:*

*40. Եվ Կյուրոսն ասաց. «Բայց, Զևսը վկա, դու, ով արմեն, ինձ թվում է, որ կատարել ես մարդուն հատուկ մի սխալ. իսկ դու, Տիգրան, ներիր քո հորը»:*

*Այսպես զրուցելուց և իրար հանդեպ սիրալիր վերաբերմունք ցույց տալուց հետո, մի բան, որ բնական էր նման հաշտության դեպքում, նրանք նստեցին կառքերը և իրենց կանանց հետ ուրախ հեռացան:*

*41. Հասնելով տուն, նրանք խոսում էին՝ մեկը Կյուրոսի իմաստության մասին, մյուսը՝ արիության, մյուսը՝ հեզության, իսկ մեկ ուրիշն էլ նրա գեղեցկության և հասակի մասին:*

*Այնժամ Տիգրանը հարցրեց իր կնոջը. «Իսկ քեզ, ով արմենուհի, Կյուրոսը նույնպե՞ս գեղեցիկ թվաց»:*

*«Բայց,- պատասխանեց կինը,- Զևսը վկա, ես նրան չէի նայում»:*

*«Հապա ո՞ւմ էիր նայում»,- հարցրեց Տիգրանը:*

*«Վկա է Զևսը, ես նայում էի նրան, ով ասաց, թե իր կյանքը կտա որ ես ստրուկ չլինեմ»:*

*Այս դեպքերից հետո, ինչպես սպասելի էր, նրանք իրար հետ միասին հանգստացան:*

*42. Հաջորդ օրը արմենը Կյուրոսին և ամբողջ զորքին ընծաներ ուղարկեց: Նա հայտնեց իր մարդկանց, որոնք պետք է ռազմի ելնեին, երրորդ օրը գալ. իսկ դրամ, որի մասին ասել էր Կյուրոսը, նա կրկնակի վճարեց, բայց Կյուրոսը վերցրեց ինչքան որ ասել էր և մնացածը ետ ուղարկեց: Նա հարցրեց, թե ո՞վ կլինի զորքն առաջնորդողը. որդի՞ն, թեև ինքը: Երկուսն էլ միաժամանակ պատասխանեցին. Հայրն ասաց՝ «Նա, ում դու կհրամայես», իսկ որդին ասաց՝ «Ես քեզ երբեք չեմ լքի, ով Կյուրոս, եթե անգամ ստիպված լինեմ որպես բեռնակիր հետևել քեզ»:*

*43. Իսկ Կյուրոսը ծիծաղելով ասաց. «Մի՞թե կուզենաս, որ քո կինը լսի, թե դու բեռներ ես կրում»:*

*«Բայց նա,-ասաց Տիգրանը,- այդ բանը լսելու կարիքը չունի, քանզի ես նրան ինձ հետ կտանեմ, որպեսզի կարողանա տեսնել, թե ինչ եմ անում»:*

*«Արդեն ժամանակն է,-ասաց Կյուրոսը,- որ դուք պատրաստվեք ճանապարհվելու»:*

*«Վստահ եղիր,- պատասխանեց Տիգրանը,- որ երբ մենք պատրաստ լինենք ճանապարհվելու, կգանք այն ամենով, ինչ կտա հայրս»:*

*Այս ամենից հետո զինվորները՝ ստանալով իրենց ընծաները, գնացին քնելու:*

## Գիրք երրորդ

### Գլուխ երկրորդ

1. Հաջորդ օրը Կյուրոսը՝ վերցնելով իր հետ Տիգրանին, մեդական հեծյալներից լավագույններին և իր ընկերներից նրանց, որոնց նա անհրաժեշտ համարեց, շրջագայության ելավ, և դիտելով շուրջը, մտածում էր, թե որտե՞ղ պիտի բերդեր շինել: Եվ երբ հասան ինչ-որ բարձունքի, նա հարցրեց Տիգրանին, թե որտե՞ղ են գտնվում այն լեռները, որտեղից խալդայները ցած են արշավում և կողոպտում: Եվ Տիգրանը ցույց տվեց այդ լեռները[12]: Կյուրոսը դարձյալ հարցրեց. «Այժմ այդ լեռները անմարդաբնակ են»:

«Ձեսը վկա, իհարկե՝ ոչ,- պատասխանեց Տիգրանը:- Այնտեղ մշտապես պահակներ կան, որոնք ազդանշանով մյուսներին իմաց են տալիս իրենց տեսածի մասին»:

«Եվ ի՞նչ են անում այդ մասին իմացողները»,- հարցրեց Կյուրոսը:

«Օգնության են գալիս դեպի գագաթները, ով ինչպես կարող է»:

2. Այս ամենը Կյուրոսը լսեց և դիտելով շուրջը, նկատեց, որ արմենների երկրի մի մեծ մասն անմշակ է ու ամայի՝ պատերազմի պատճառով: Ապա նրանք վերադարձան բանակատեղի և ընթրելուց հետո քնեցին:

3. Հաջորդ օրը եկավ ինքը՝ Տիգրանը, պատրաստ ճանապարհվելու. նրա հետ էր նաև հավաքված զորքը՝ չորս հազար ձիավոր, շուրջ մեկ բյուր աղեղնավորներ և այդքան էլ պելտաստներ:

Մինչև նրանք հավաքվում էին Կյուրոսը զոհ էր մատուցում. և քանի որ զոհանշանները բարեհաջող էին, նա ժողովի հրավիրեց պարսիկ և մեդացի հրամանատարներին:4. Երբ նրանք հավաքվեցին, նա այսպես խոսեց.

«Սիրելի այրեր, այս լեռները, որ տեսնում ենք, խալդայներինն են: Եթե մենք դրանք գրավենք և դրանց գագաթին լինի մեր ամրությունը, մեր հանդեպ սթափված կլինեն խելոք մնալ և՛ արմենները, և՛ խալդայները: Արդ, զոհերը մեզ համար բարենշան եղան: Այդ ամենը մարդկային ջանքերով կատարելու գործում ոչինչ այնպիսի դաշնակից չի կարող լինել, ինչպես արագությունը Եթե մենք հասցնենք բարձրանալ լեռները նախքան թշնամիների հավաքվելը, գագաթը կգրավենք կամ բոլորովին առանց կռվի, կամ մեզ կպատահենք փոքրաթիվ և թույլ թշնամիների:

5. Չկա առավել հեշտ և առավել անվտանգ գործ, քան շտապ

*եկողներին դիմադրելը: Ուրեմն, ի զեն: Եվ...*[13]

*Դուք, մեղացիներ, գնացեք մեր ձախ կողմով. իսկ դուք, արմեններ, կեսդ՝ աջ կողմով, կեսդ՝ մեր առջևից: Դուք, ձիավորներ, մեզ խրախուսելով և առաջ մղելով, եկեք ետևից, և թույլ մի տվեք, որ որևէ մեկը թուլանա»:*

*6. Այս ասելով՝ Կյուրոսը, դասակներից ուղիղ շարքեր կազմած՝ առաջնորդեց իր զորքը: Իսկ խալդայները, տեսնելով, որ նրանք արագընթաց վերև են շտապում, իսկույն ազդանշանեցին յուրայիններին, սկսեցին իրար կանչել և ի մի հավաքվեցին:*

*Իսկ Կյուրոսը այսպես հրամայեց. «Պարսիկ այրեր, մեզ նշան են անում, որ շտապենք. քանզի եթե վերև հասնենք, թշնամիների ջանքերը ապարդյուն կլինեն»:*

*7. Յուրաքանչյուր խալդայ ուներ հյուսկեն վահան և մի զույգ նիզակ. ասում էին, թե նրանք ամենառազմատենչ մարդիկ են այդ տարածքում ապրող ցեղերից: Նրանք վարձով ծառայում էին զորքի մեջ, եթե որևէ մեկը նրանց կարիքն ունենար, քանզի խիստ ռազմունակ էին, բայց և աղքատ. քանի որ նրանց երկիրը լեռնոտ է և սոսկ մի փոքր մասն է բարեբեր:*

*8. Երբ Կյուրոսն իր զորքով առավել մոտեցավ գագաթներին, Տիգրանը, որը գնում էր Կյուրոսի հետ, ասաց. «Եվ Կյուրոս, գիտե՞ս արդյոք, շատ անհրաժեշտ է, որ իսկույն մենք ինքներս կռվի բռնվենք. քանզի արմենները, վստահ եմ, անկարող կլինեն դիմանալ թշնամու հարձակմանը»:*

*Կյուրոսն ասաց, թե ինքը այդ գիտի և իսկույն հրամայեց պարսիկներին պատրաստվել, «քանզի հարկավոր կլինի թշնամուն արագ հետապնդել՝ հենց որ արմենները փախչելով, դեպի իրենց քաշեն թշնամիներին, որպեսզի սրանք մոտենան մեզ»:*

*9. Արմեններն այսպես առջևից էին գնում, իսկ այնտեղ գտնվող խալդայները, երբ արմենները մոտեցան, իսկույն աղաղակելով, ըստ իրենց սովորության, վազեցին նրանց վրա. իսկ արմենները, ըստ սովորության, նրանց գրոհին չդիմացան: 10. Երբ հետապնդող խալդայները իրենց առաջ տեսան վերև բարձրացող սուսերավորներին, սրանց մոտեցածներն արագ սպանվեցին՝ ոմանք փախան, իսկ ոմանք գերի ընկան: Եվ գագաթները շուտով գրավվեցին: Կյուրոսի զորքերը գագաթները գրավելուց հետո, բարձրից տեսան խալդայների բնակարանները և նկատեցին, որ նրանք փախչում են մոտիկ բնակարաններից:*

*11. Երբ բոլոր զինվորները հավաքվեցին, Կյուրոսը կարգադրեց*

*նախաճաշել: Երբ արդեն նախաճաշեցին, նա, նկատելով,որ այն վայրը, ուր գտնվում էին խաղդայների պահակները, ամուր է և ջրառատ, իսկույն սկսեց ամրություն կառուցել այնտեղ: Նա պատվիրեց նաև Տիգրանին մարդ ուղարկել հոր մոտ և հայտնել, որ գա ու բերի իր հետ հյուսներ և քարագործներ, որքան որ կլինեն: Բանբերը մեկնեց արմենի մոտ. իսկ Կյուրոսն սկսեց ներկաների օգնությամբ ամրությունը կառուցել:*

*12. Այդ ընթացքում Կյուրոսի մոտ բերեցին կապված գերիներին, որոնցից ոմանք վիրավոր էին: Երբ տեսավ նրանց, իսկույն հրամայեց արձակել կապվածներին, իսկ վիրավորների համար բժիշկներ կանչելով՝ հրամայեց բուժել: Այնուհետև նա ասաց խաղդայներին, որ եկել է ոչ թե նրանց կործանելու ցանկությամբ, ոչ էլ պատերազմելու նպատակով, այլ արմենների և խաղդայների միջև խաղաղություն հաստատելու ցանկությամբ:*

*«Նախքան այս գագաթների գրավումը մեր կողմից, ես գիտեմ, որ դուք խաղաղություն չեք կամեցել, քանի որ, մի կողմից, ձեր գույքն ապահով է եղել, մյուս կողմից, կողոպտել եք արմեններին: Իսկ այժմ տեսեք, թե ի՞նչ վիճակում եք: 13. Ես այժմ ձեզ կալանվածներիդ, ազատ կարձակեմ, որպեսզի գնաք տուն, և հնարավորություն կտամ խորհրդակցելու մյուս խաղդայների հետ, թե արդյոք կամենում եք պատերազմե՞լ մեր դեմ, թե՞ բարեկամ լինել: Եվ եթե դուք կգերդասեք պատերազմել, ապա երբեք, եթե խելացի եք, այլևս այստեղ մի եկեք առանց զենքի: Իսկ եթե որոշեք, որ ձեզ խաղաղություն է անհրաժեշտ, եկեք առանց զենքի: Եթե դուք մեզ բարեկամ լինեք, ես կհոգամ, որ ձեր գործերը լավ լինեն»:*

*14. Այս լսելուց հետո խաղդայները մեծապես գովեցին Կյուրոսին և երկար ձեռք սեղմումներից հետո մեկնեցին տուն:*

*Իսկ արմենը, երբ իմացավ Կյուրոսի  հրավերի և ձեռնարկման մասին, իր հետ վերցնելով հյուսներին, և այն ամենը, ինչ անհրաժեշտ էր համարում, շտապ եկավ Կյուրոսի մոտ: 15. Երբ նա տեսավ Կյուրոսին, ասաց. «Ով Կյուրոս, մենք մարդիկս ինչքան քիչ բան կարող ենք կանխատեսել ապագայի նկատմամբ, բայց ձեռնարկում ենք շատ բան անել: Արդ, ես ևս փորձեցի ազատություն ձեռք բերել, բայց ստրուկ դարձա ավելի, քան երբևէ: Երբ մենք գերի ընկանք, կարծեցինք, որ հաստատապես կորստի էինք մատնվել, բայց այժմ պարզվում է, որ մենք փրկված ենք առավել, քան երբևէ: Քանզի նրանք, ովքեր անդադար մեզ չարիք էին պատճառում, այժմ տեսնում եմ, որ այնպիսի վիճակում են, ինչպես ես էի ցանկանում: 16. Այս էլ իմացիր, ով Կյու-*

*րոս, որ խալդայներին գագաթներից հեռացնելու համար բազմապատիկ դրամ եմ ծախսել, քան դու այժմ ստացել ես ինձանից: Եվ այն բարիքները, որ դու խոստացել էիր, թե կանես մեզ, որովհետև դրամ էիր ստացել, քո կողմից արդեն կատարված է, ուստի և մենք քեզ պարտ ենք այլ երախտիքներ, որ մենք կամաչենք քեզ չհատուցել, եթե անազնիվ չենք»: Արմենն ահա այսպես խոսեց:*

*Իսկ խալդայները եկան խնդրելու Կյուրոսին, որ իրենց հետ հաշտություն կնքի: Եվ Կյուրոսը հարցրեց նրանց. «Մի՞թե ճիշտ չէ, ով խալդայներ, որ դուք այժմ խաղաղություն եք ցանկանում այն պատճառով, որ կարծում եք, թե ավելի ապահով կարող եք ապրել խաղաղության դեպքում, քան պատերազմի, քանի որ մեր ձեռքին են բարձունքները»:*

*Խալդայները դրական պատասխանեցին:*

*18. Եվ Կյուրոսը հարցրեց. «Ի՞նչ կասեք, եթե խաղաղության շնորհիվ դուք այլ բարիքներ ևս ստանաք»:*

*«Առավել ևս կուրախանանք»,- ասացին նրանք:*

*«Լավ,- ասաց Կյուրոսը,- ճիշտ չէ՞, որ դուք այժմ աղքատ եք, ձեր կարծիքով՝ լավ հողերի սակավության պատճառով»:*

*Նրանք այդ ևս հաստատեցին:*

*«Ուրեմն ի՞նչ,- հարցրեց Կյուրոսը:- Չէի՞ք ցանկանա, որ դուք ևս վճարեք նույնքան, ինչքան և մյուս արմենները, և թույլատվություն ստանայիք մշակելու Արմենիայի հողերը, որքան որ կամենայիք»:*

*«Եթե վստահ լինեինք, որ նրանք մեզ չեն նեղացնի»,- պատասխանեցին խալդայները:*

*19. «Իսկ դու, ով արմեն, - ասաց Կյուրոսը,- չէի՞ր ցանկանա, որ քո այժմյան անմշակ հողերը մշակվեին, եթե մշակողները համաձայնվեին վճարել քեզ մոտ ընդունված տուրքերը»:*

*Արմենը պատասխանեց, թե՝ դա իր համար մեծ արժեք կունենար, քանի որ խիստ կավելանար եկամուտը:*

*20. «Իսկ դուք, խալդայներ, - հարցրեց Կյուրոսը,- որ լավ լեռներ ունեք, չէի՞ք թույլ տա, որ արմենները դրանք օգտագործեն որպես արոտավայր, եթե արածացնողները հոժարեին ձեզ վճարել արդար տուրք»:*

*«Մենք մեծ եկամուտ կստանայինք առանց աշխատելու»,- պատասխանեցին խալդայները:*

*«Իսկ դու, ով արմեն,- հարցրեց Կյուրոսը, - կուզենայի՞ր օգտվել նրանց արոտավայրերից, եթե փոքր օգուտ տալով խալդայներին, ինքդ առավել մեծ օգուտ ստանայիր»:*

*«Եվ շատ կցանկանայի,- պատասխանեց արմենը,- եթե համոզվեի, որ արոտներից օգտվելը անվտանգ կլինի»:*

*«Բայց չէ՞ որ դուք կարող եք արոտներից անվտանգ օգտվել, եթե գագաթները ձեզ դաշնակից լինեն»,- ասաց Կյուրոսը:*

*«Այդպես է»,- պատասխանեց արմենը:*

*21. «Բայց, Զեսը վկա,- ասացին խալդայները,- մենք չենք կարողանա անվտանգ մշակել ոչ միայն նրանց, այլև մեր հողերը, եթե գագաթները նրանք գրավեն»:*

*«Իսկ եթե, - ասաց Կյուրոսը,- գագաթները լինեն ձեր դաշնակի՞ցը»:*

*«Այդ դեպքում,- ասացին նրանք,- մեզ համար լավ կլինի»:*

*«Բայց, Զեսը վկա, - ասաց արմենը,- մեզ համար լավ չի լինի, եթե սրանք դարձյալ ստանան գագաթները, և այն էլ՝ ամրացված»:*

*22. Եվ Կյուրոսն ասաց. «Ուրեմն՝ ես կվարվեմ այսպես. ձեզանից և ոչ մեկին գագաթները ես չեմ տա, այլ դրանք մենք կպահենք մեր ձեռքին. իսկ եթե ձեզանից որևէ մեկն անարդարություն գործի, մենք անարդարություն կրածների կողմը կլինենք»:*

*23. Այս որ լսեցին, երկու կողմերն էլ հավանություն տվեցին և ասացին, որ խաղաղությունը կարող է հաստատ լինել միայն այդ ձևով: Ընդ որում նրանք իրար հավատարմության երաշխիքներ տվեցին և պայմանավորվեցին, որ երկու կողմերը իրար հանդեպ կպահպանեն իրենց ազատությունը, իրավունք կունենան փոխադարձ ամուսնության, ինչպես նաև իրար հողերի և արոտավայրերի օգտագործման, և կպաշտպանեն իրար ընդհանուր ուժերով, եթե իրենցից որևէ մեկին անարդարություն արվի:*

*24. Այդ ժամանակ այսպիսի դաշինք կնքվեց Արմենիայի տիրակալի և խալդայների միջև, որն այժմ էլ մնում է անխախտ: Համաձայնության գալուց հետո երկու կողմն էլ հոժարակամ խկույն կառուցեցին ամրությունը, որն ընդհանուր էր լինելու, և այնտեղ բերեցին ուտելեղեն:*

*25. Երեկոյան Կյուրոսը նրանց իր մոտ հրավիրեց ընթրիքի՝ արդեն որպես բարեկամների: Խնջույքի ընթացքում խալդայներից մեկը ասաց. թե այս ամենը մնացած բոլորի համար ցանկալի են, բայց խալդայների մեջ կան ոմանք, որոնք ապրում են կողոպուտներով և որոնք ոչ գիտեն և ոչ իսկ կարող են զբաղվել երկրագործությամբ, քանզի սովոր են իրենց ապրուստը հայթայթել պատերազմի միջոցով: Նրանք մշտապես կամ կողոպուտով են զբաղվել, կամ վարձով ծառայել երբեմն հնդկաց թագավորի մոտ, որի մասին ասում են, թե շատ*

*ոսկիներ ունի, երբեմն նաև Աստյուագեսի մոտ»։*

*26. Եվ Կյուրոսն ասաց. «Ինչո՞ւ նրանք այժմ էլ ինձ մոտ վարձով չեն ծառայում։ Ես նրանց այնքան շատ վարձ կվճարեմ, ինչքան երբեք ոչ ոք չի վճարել»։*

*Նրանք համաձայնեցին և ասացին, որ շատ ցանկացողներ կլինեն։*

*27. Այդ ամենի մասին, ահա, այսպես պայմանավորվեցին։ Իսկ Կյուրոսը, երբ լսեց, թե խաղդայները հաճախ գնացել են հնդկաց թագավորի մոտ, և հիշելով, որ նրա մոտից դեսպաններ են եկել Մեդիա՝ այստեղի իրավիճակին ծանոթանալու համար, որից հետո նրանք մեկնել էին թշնամու մոտ, նրանց դրության հետ ևս ծանոթանալու համար, ցանկացավ, որ հնդիկը լսի իր մոտ կատարված դեպքերի մասին։ 28. Ուստի և նա իր խոսքն սկսեց այսպես.*

*«Ով արմեն, և դուք, ով խաղդայներ, ասացեք ինձ։ Եթե ես այժմ իմ մարդկանցից մեկին ուղարկեմ հնդկաց թագավորի մոտ, կարո՞ղ եք արդյոք ձեզանից ոմանց ուղարկել նրան ուղեկցելու, ցույց տալու ճանապարհը և ամեն կերպ օգնելու, որ հնդիկներից ստանանք այն ամենը, ինչ ես ցանկանում եմ։ Ես կկամենայի շատ դրամ ունենալ, որպեսզի հնարավորություն ունենայի առատ վարձատրել ում որ պետք է, և հարգել ու պատվել իմ զինակիցներից արժանիներին։ Այդ պատճառով, ահա, ես ուզում եմ առատ դրամ ունենալ, ինչքան որ ես կարծում եմ, թե ինձ պետք է գալու։ Ես սիրով կհրաժարվեմ ձեզանից դրամ վերցնել, քանի որ ձեզ այժմ համարում եմ ինձ բարեկամներ, իսկ հնդկաց թագավորից ես սիրով կվերցնեի, եթե նա տար։*

*29. Արդ, այն բաները, որի համար ես խնդրում եմ ձեզ ուղեցույցներ և աջակիցներ, տալ, այնտեղ հասնելով՝ կասի հետևյալը. «Ով հնդիկ. ինձ քեզ մոտ է ուղարկել Կյուրոսը։ Նա ասում է, թե դրամի կարիք ունի, քանի որ իր երկրից, Պարսկաստանից, ուրիշ զորքեր է սպասում։ Եվ ես, իրոք,- ասաց Կյուրոսը,- սպասում եմ։ Արդ, եթե դու ուղարկես նրան ինչքան կարող ես, ապա, - ասում է Կյուրոսը,- եթե աստված նրա ձեռնարկմանը բարեհաջող ելք շնորհի, այդ դեպքում նա ջանք չի խնայի, որպեսզի նրան քո ցույց տված օգնությունը դու համարես հաջող ընդունված որոշում»։ 30. Իմ ուղարկած բաները այսպես պետք է հայտնի։ Իսկ դուք, ձեր հերթին, ձեր մարդկանց կհանձնարարեք հաղորդել հնդկաց թագավորին այն, ինչ ինքներդ կհամարեք օգտակար։ Եթե մենք ստանանք նրանից, ապա առավել առատ դրամ կունենանք օգտագործելու։ Իսկ եթե չստանանք, ապա մենք կիմանանք, որ նրան ոչնչով պարտական չենք, և մեր հարաբերություններում նրա հետ կառաջնորդվենք միայն մեր շահերը նկատի ունենալով։*

*Այսպես խոսեց Կյուրոսը՝ հուսալով, որ արմենների և խալդայների կողմից ուղարկվողները իրեն գովելով այնպիսի խոսքեր կասեն, որ մարդկանց մոտ կտարածեն իր համբավը: Այս ամենից հետո, երբ ժամը հասավ, խնջույքն ավարտեցին ու գնացին հանգստանալու:*

## *Գիրք երրորդ*

### *Գլուխ երրորդ*

*1. Հաջորդ օրը Կյուրոսը բանբերին ուղարկեց՝ հանձնարարելով այն, ինչ ասել էր: Արմենը և խալդայները նրա հետ ուղարկեցին իրենց մարդկանց, որոնք կարծում էին, ամենաընդունակներն են և կարող են թե՛ աջակցել, և թե՛ Կյուրոսի մասին ասել այն, ինչ պատշաճ էր: Այնուհետև Կյուրոսը զբաղվեց ամրությամբ՝ տրամադրելով բավականաչափ բերդապահ զինվորներ և ամեն տեսակ պարեն, և նրանց իբրև պետ թողնելով մի մեդացու, որին նա համարում էր Կյուաքսարեսին առավել հավատարիմ, մեկնեց՝ իր հետ վերցնելով թե՛ այն զորքը, որի հետ ինքը եկել էր, և թե՛ այն, որը ստացել էր արմեններից, նաև խալդայներից՝ շուրջ չորս հազար զինվոր, որոնք բոլոր մնացածներից առավել լավ էին համարվում:*

*2. Երբ Կյուրոսն իջավ բնակեցված շրջանները, արմեններից ոչ ոք չմնաց տան ներսում. ո՛չ այր և ո՛չ կին, այլ բոլորը՝ ուրախացած խաղաղության համար, դիմավորում էին նրան, իրենց հետ բերելով այն, ինչ ամեն մեկն ուներ և համարում էր արժեքավոր: Եվ արմենը դրանից չէր դժգոհում՝ մտածելով, որ ընդհանուրի այդ հարգանքը, Կյուրոսին ավելի մեծ ուրախություն կպատճառի: Ի վերջո, նրան դիմավորեց նաև արմեն թագավորի կինը՝ իր դուստրերի և կրտսեր որդու հետ, և այլ ընծաների հետ բերեց նաև ոսկին, որը նախապես Կյուրոսը չէր ուզեցել վերցնել:*

*3. Կյուրոսն այդ տեսնելով, ասաց. «Դուք այնպես մի արեք, որ ես այս ու այն տեղ շրջելիս բարեգործություն անեմ հանուն վարձատրության. բայց դու, ով թագուհի, վերցրու քո բերած ոսկին և գնա ու այլևս մի տուր դրանք արմենին, որ նա գետնի մեջ թաղի, այլ այդ դրամով որդուդ զարդարիր ամենագեղեցիկ ձևով և նրան ուղարկիր զորքի մեջ, իսկ մնացածով քեզ, ամուսնուդ, դստրերիդ ու որդիներիդ համար գնիր այնպիսի բաներ, որոնցով զարդարվելով ձեր կյանքը կանցկացնեք առավել գեղեցիկ և ուրախ: Իսկ հողում,– ասաց*

*նա, – բավական կլինի, որ մեր մարմինները թաղվեն, երբ մեզանից որևէ մեկը վախճանվի»:*

*4. Այս ասելուց հետո Կյուրոսը մեկնեց նրանց մոտից: Իսկ արմենը և բոլոր մյուսները նրան ճանապարհ դրին՝ բարձրաձայն նրան կոչելով բարերար և բարի մարդ, և այն անում էին, մինչև որ նա հեռացավ երկրից: Արմենը նրա հետ ուղարկեց ավելի շատ զորք, քանզի երկրում խաղաղություն էր:*

*5. Արդ, Կյուրոսը մեկնեց այդպես՝ հարստացած ոչ միայն իր ստացած դրամներով, այլև իր վարվելակերպով նա հնարավորություն ստեղծեց ստանալու դրանից շատ ավելին, երբ կարիք ունենար: Եվ այնժամ նա բանակեց սահմանավայրերում: Հաջորդ օրը նա զորքը և դրամը ուղարկեց Կյուաքսարեսին, որն, ինչպես խոստացել էր, մոտիկ էր գտնվում: Իսկ ինքը Տիգրանի և պարսից երևելիների հետ որս էր անում այն վայրերում, որտեղ պատահում էին վայրի կենդանիներ, և զվարճանում էր:*

*1. Խոսքն այստեղ ուղղված է մարական թագավոր Աստիագեսի Կիաքսար անունով որդուն, որը, ըստ Քսենոփոնի, Աստիագեսի մահից հետո ժառանգել էր հոր գահը և դարձել Մեդիայի թագավոր: Սակայն, ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, սույն Կիաքսարը Քսենոփոնի կողմից ստեղծված վիպական, մտացածին կերպար է: Իրականում, այս իրադարձությունների ժամանակ, Մեդիայի թագավորն էր հիշյալ Աստիագեսը (584-553) ՝ մարական պետության հիմնադիր Կիաքսարի (624-584) որդին:*

*2. Կյուրոսն այդ ժամանակ մարական թագավոր Աստիագեսի (ըստ Քսենոփոնի՝ Կիաքսարի) զորապետներից էր:*

*3. Չնայած Քսենոփոնը չի հիշատակում Հայոց թագավորի անունը, սակայն Մովսես Խորենացու մոտ պահպանված խիստ արժեքավոր վկայություններից կարելի է եզրակացնել, որ նա եղել է Երվանդունիների հայկական պետության թագավոր Երվանդ Սակավակյացը: Կիաքսարի և Աստիագեսի ժամանակ Հայաստանը որոշ կախվածություն ուներ Մեդիայից: Դա արտահայտվում էր նրանով, որ Հայաստանը Մեդիայի մղած պատերազմների ժամանակ նրան տրամադրում էր 20.000 հետևազոր և 4000 հեծելազոր և վճարում էր հարկ՝ 50 տաղանդի չափով: Օգտվելով մարական պետության թուլացումից՝ Հայոց Երվանդ Սակավյակաց թագավորը ապստամբում է Աստիագեսի դեմ և հրաժարվում հարկ վճարել ու զորք տրամադրել վերջինիս:*

*4. «... **ինչպես այդ արել է իմ հայրը**» – ըստ Քսենոփոնի, Կիաքսարի հայրը Աստիագեսն էր:*

*5. **Սաբարիս** – ըստ Հ. Մանանդյանի՝ Շավարշ, Հայոց Երվանդ Սակավակյաց թագավորի կրտսեր որդին:*

*6. Երվանդ Սակավակյացի ավագ որդին է՝ հետագայում Հայոց թագավոր Տիգրան Երվանդյանը: Դաստիարակվել է Աստիագեսի արքունիքում՝ էկբատանում, Կյուրոսի հետ մեկտեղ, եղել է վերջինիս մտերիմը: Խորենացու հաղորդմամբ («Պատմություն Հայոց», Ա, գլ. ԻԴ), Տիգրանը Կյուրոսին աջակցում է Մարաց իշխանությունը տապալելու և վերականգնում է Հայաստանի անկախությունը: Դեռևս շատ հնում հայ ժողովուրդը Տիգրան Երվանդյանի անվան շուրջը հյուսել է ավանդություններ, որոնք կազմել են հայկական էպոսի ամենահին շերտերից մեկը:*

*7. «**Պատվավոր արմեններ**» – Քսենոփոնը նկատի ունի Հայոց մեծամեծներին, երևելիներին: Այս փաստը կարևոր վկայություն է Ք. ա. VI դարի հայ հասարակության սոցիալական շերտավորման մասին:*

*8. Մեդիայի թագավոր Աստիագեսն, իրոք, Կյուրոսի պապն էր. Կյուրոսի հայրը՝ Կամբիսը ամուսնացել էր Աստիագեսի Մանդանա դստեր հետ (տե՛ս **Հերոդոտոս**, Պատմություն, I, 107): Հետևաբար, Քսենոփոնի վիպական Կիաքսարը (տե՛ս 230-րդ էջ, ծան. № 1) «Կյուրոպեդիայում» հանդես է գալիս որպես Կյուրոսի մորեղբայր:*

*9. Բնագրում՝ «... ինչ-որ մի սոփեստի»:*

*10. **Տաղանդ** – Հին Արևելքի երկրներում քաշի միավոր, որն այնուհետև տարածվեց նաև հույների ու հռոմեացիների մոտ: Բաբելոնական տաղանդի կշիռը մոտավորապես 30,3 կգ էր, պարսկականը՝ 32,640 կգ, իսկ հունականը՝ 26,2 կգ: Հ. Մանանդյանի հաշվումներով՝ Երվանդ Սակավակյացի հարստությունը հավասար էր մոտավորապես 12 միլիոն ոսկի ռուբլու:*

*11. Խաղդյաների ցեղախմբերը բնակվելիս են եղել հայկական բարձրավանդակի հյուսիսային և հյուսիսարևմտյան ծայրամասերում: Ի. Մ. Դյակոնովի, կարծիքով խալդյաները քարթվելական ծագում ունեին (*«История Мидии», М.-Л., *1956, էջ 351, ծան. 1):*

*12. Խոսքը Պոնտական լեռների մասին է:*

*13. Բնագրում առկա է բացթողում:*

## ՏԻԳՐԱՆ ԵՐՎԱՆԴՅԱՆԻ ՊԱՅՔԱՐԸ ՄԱՐԱՍՏԱՆԻ ԴԵՄ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Ա*

### *ԻԴ*

#### ՏԻԳՐԱՆԻ ՄԱՍԻՆ, ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԷՐ ԱՄԵՆ ԲԱՆՈՎ

*Բայց անցնենք այսուհետև գրելու Տիգրանի[1] և նրա գործերի մասին: Որովհետև սա մեր թագավորներից ամենահզորը և ամենախոհեմն էր և նրանց բոլորից քաջ: Նա Կյուրոսին[2] աջակից եղավ Մարաց[3] իշխանությունը տապալելու, հույներին էլ ոչ քիչ ժամանակ նվաճելով[4] իրեն հնազանդեցրեց և մեր բնակության սահմաններն ընդարձակելով հասցրեց մինչև հին բնակության սահմանների ծայրերը. բոլոր իր ժամանակակիցներին նախանձելի եղավ, իսկ հետո եկողներիս ցանկալի թե՛ ինքը և թե՛ իր ժամանակը:*

*Եվ ո՞ր իսկական մարդը, որ սիրում է արիության բարքը և խոհականությունը, չի ուրախանա սրա հիշատակությամբ և չի ձգտի նրա նման մարդ լինել: Նա տղամարդկանց գլուխ կանգնեց և ցույց տալով քաջություն՝ մեր ազգը բարձրացրեց, և մեզ, որ լծի տակ էինք, դարձրեց շատերին լուծ դնողներ և հարկապահանջներ, ոսկու, արծաթի, պատվական քարերի, զգեստների և զանազան գույների, գործվածքների՝ հարստություններ տղամարդկանց ու կանանց համար՝ առհասարակ բազմացրեց, որոնցով խիստ տգեղները գեղեցիկների նման սքանչելի էին երևում, իսկ գեղեցիկներն այն ժամանակի համեմատ աստվածանում էին: Հետևակ կռվողները ձիավոր դարձան, պարսերով կռվողներն հաջող աղեղնավորներ, լախտերով կռվողները զինվեցին սրերով ու տեգավոր նիզակներով, մերկերը[5] պատվեցին վահաններով ու երկաթե զգեստներով: Եվ երբ նրանք մի տեղ հավաքվեին, միայն նրանց արտաքին տեսքն ու նրանց պահպանակների ու զենքերի փայլն ու շողքն բավական էին թշնամիներին հալածելու և վանելու: Նա խաղաղություն և շենություն գցեց, բոլորին լիացրեց յուղով և մեղրով:*

*Այս և այսպիսի ուրիշ շատ բաներ բերեց մեր երկրին այս խարտյաշ և մազերի ծայրը գանգուր Երվանդյան Տիգրանը՝ գունեղ երեսով, քաղցր նայվածքով, ուժեղ սրունքներով, գեղեցիկ ոտներով, վայելչակազմ և թիկնավետ, կերակուրների և ըմպելիքների մեջ պարկեշտ, ուրախությունների մեջ օրինավոր, որի մասին մեր հները, որոնք*

*փանդիռներով[6] երգում էին, ասում էին, թե մարմնի ցանկությունների մեջ էլ չափավոր է եղել, մեծիմաստ և պերճախոս և լի բոլոր (հատկություններով), որ պիտանի են մարդուն: Եվ այս գրքում ի՞նչ կա ինձ ավելի սիրելի, քան սրա մասին եղած գովեստներն ու պատմությունը երկարել: Նա ամեն բանի մեջ արդարադատ և հավասարասեր կշեռք ունենալով՝ ամեն մեկի կյանքը կշռում էր իր մտքի լծակով, չէր նախանձում լավագույններին, չէր արհամարհում նվաստներին, այլ աշխատում էր ընդհանրապես ամենքի վրա տարածել իր խնամքի զգեստը:*

*Սա սկզբում դաշնակից լինելով Աժդահակին[7], որ Մարացի էր, նրան կին է տալիս իր Տիգրանուհի քրոջը, որին թախանձանքով ուզում էր Աժդահակը: Որովհետև (Աժդահակը) մտածում էր՝ այսպիսի ազգականության շնորհիվ կա՛մ հաստատուն սեր պահպանել Տիգրանի հետ, կա՛մ այս կերպով հեշտությամբ դավաճանորեն սպանել:*

## *ԻԵ*

### ԱԺԴԱՀԱԿԻ ԵՐԿՅՈՒՂԻ ՈՒ ԿԱՍԿԱԾԱՆՔԻ ՄԱՍԻՆ ԿՅՈՒՐՈՍԻ ԵՎ ՏԻԳՐԱՆԻ ՍԻՐՈ ԵՎ ՄԻԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՏՃԱՌՈՎ

*Բայց նրա այս մտածմունքների առիթն էր մտերմական դաշինքը, որ Կյուրոսն առաջարկեց Տիգրանին և շատ անգամ, երբ Աժդահակն այս բանը հիշում էր, քունը փախչում էր նրանից, և անդադար նա խորհրդակիցներին այսպիսի հարց էր տալիս. «Ինչպիսի՞ հնարանքներով մենք պիտի կարողանանք քանդել սիրո կապը պարսիկների և բազմաբյուր զորքեր ունեցող հայի միջև»:*

## *ԻԹ*

### ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՆԵՆԳՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅՏՆԻ ԴԱՐՁԱՎ ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄՆ ՍԿՍՎԵՑ. ԵՎ ԱԺԴԱՀԱԿԻ ՄԱՀՆ ԱՅԴ ԿՌՎՈՒՄ

*Սրանից հետո ասում է[8], թե երբ Աժդահակը Տիգրանուհուն տիկնության մեջ հաստատեց, իր թագավորության մեջ ոչինչ չէր գործում առանց նրա հավանության, այլ ամեն բան կարգադրում էր նրա ասածի պես և հրամայում էր, որ բոլորը նրա հրամանին հնազանդվեն: Այս այսպես կարգադրելով՝ սկսում է այնուհետև մեղմով խաբե-*

*ուԹյամբ նրան գրավել: «Դու չգիտես, ասում է նա, որ քո եղբայր Տիգրանը նախանձել է, որ դու Արյաց[9] տիկին ես դերձել, նրան գրգռում է նրա կինը՝ Զարուհին: Ի՞նչ կլինի սրա հետևանքը, եԹե ոչ՝ որ նախ ես կմեռնեմ և հետո Զարուհին Արյաց վրա (տիկին) կդառնա և աստվածուհիների տեղը կբռնի: Ուրեմն քեզ մնում է ընտրել այս երկուսից մեկը – կա՛մ լինել եղբայրասեր և հանձն առնել խայտառակ կործանում Արյաց առաջ, կա՛մ քո բարին հասկանալով մի օգտակար բան մտածել և առաջիկա անցքերի մասին հոգալ»:*

*Այս խորամանկուԹյան մեջ Թաքցրած էր, Թե Տիգրանուհին կմեռնի, եԹե մարապարսկացու ցանկուԹյան համաձայն չվարվի: Իսկ խորագետ գեղեցկուհին այս դավաճանուԹյունը հասկանալով՝ սիրալիր խոսքերով է պատասխանում Աժդահակին և մտերիմների միջոցով չտապով եղբորը հայտնում է նենգուԹյունը:*

*(Աժդահակն) այնուհետև գործի է ձեռնարկում, պատգամավորների ձեռքով (առաջարկելով Տիգրանին), որ բարեկամական տեսակցուԹյան համար գա երկու ԹագավորուԹյունների սահմանագլուխ մի տեղում, իբր Թե մի կարևոր գործ ու խոսելիք կա, որ չի կարելի կատարել գրի և պատվիրակուԹյան միջոցով, բայց միայն անձամբ դեմ առ դեմ հանդիպումով: Սակայն Տիգրանը պատվիրակուԹյան դիտավորուԹյունը իմանալով՝ Աժդահակի խորհուրդներից ոչ մի բան ծածուկ չի Թողնում, այլ գրով հայտնում է, ինչ որ նրա սրտի խորքում կար: Երբ այսպիսով չարուԹյունը հայտնի դարձավ, այլևս ոչ մի խոսքով, ոչ մի խորամանկուԹյամբ չէր կարելի չարուԹյունը քողարկել, և այնուհետև Թշնամական դրուԹյունը հայտնի գրգռվում էր:*

*Եվ Հայոց Թագավորը (զորք) է ժողովում Կապադովկիայի սահմաններից, Վրաց և Աղվանից ընտիրները՝ որքան որ կային, և Մեծ ու Փոքր Հայքի բոլոր ընտիրները, և ամբողջ զորուԹյամբ դիմում է Մեդացիների կողմերը: Վտանգը հարկադրում է Աժդահակին Հայկազունի[10] դեմ ելնել պատերազմելով ոչ փոքր բազմուԹյամբ: ՀակառակուԹյան գործը ձգձգվում է մինչև հինգ ամիս, որովհետև արագ ու առողջ գործը Թուլանում է, քանի որ Տիգրանը մտածում էր իր սիրելի քրոջ (Տիգրանուհու) մասին: Նա աշխատում էր այնպիսի մի հնար գտնել, որ Տիգրանուհին փրկվելու ճար գտնի: Երբ այս հաջողվում է, մոտենում է և կռվի ժամը:*

*Բայց գովում եմ իմ քաջամարտիկ նիզակավորին, որ բոլոր անդամներով համաչափ էր, մեկը մյուսին ամեն կերպ պատշաճեցրած, կատարյալ գեղեցիկ հասկով, առույգ և ուժի կողմից իրեն հավասարը չունեցող: Եվ ինչո՞ւ ես խոսքս երկարացնում. կռվի ժամանակ Աժդա-*

հակի երկաթե ամուր գրահը ինչպես ջուր ճեղքելով՝ Աժդահակին չամփրում է իր նիզակի ընդարձակ տեգին, և ձեռքը ետ քաշելիս՝ նրա թոքերի կեսն էլ զենքի հետ դուրս է բերում: Բայց կռիվն սքանչելի էր, որովհետև՝ ոչ մեկը մյուսին չուտով թիկունք չէր դարձնում, ուստի պատերազմը երկարում է բավական ժամեր, մինչև գործին վերջ է դնում Աժդահակի մահը: Այս բարեբախտ դիպվածը նոր փառք է ավելացնում Տիգրանին[11]:

1. Խոսքն այստեղ Երվանդունիների հայկական պետության թագավոր Տիգրան Երվանդյանի մասին է: Մովսես Խորենացու գրի առած սույն վեպը հայ ավանդական վիպական չարքի առաջնեկ գործերից է: Տիգրան Երվանդյանի կյանքն ու գործունեությունը հնուց նյութ էին դառել անգիր բանահյուսության: Նրա մասին հյուսվել է ավանդությունների մի ամբողջ էպիկական չարք, որը պատմվել ու երգվել է հին Հայաստանում:

Սակայն, ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, Տիգրան Երվանդյանի վիպական կերպարի մեջ ակնբախ երևան են գալիս Արտաշեսյան Տիգրան II Մեծի գործերն ու գծերը, որի մասին ևս գոյություն է ունեցել մի առանձին վեպ: Տիգրան II-ին նվիրված վեպի առանձին հատվածները՝ անունների նույնության պատճառով, հետագայում միահյուսվել ու խառնվել են Տիգրան Երվանդյանի մասին եղած ավանդությունների էպիկական չարքին:

2. Աքեմենյան պետության հիմնադիր Կյուրոս Մեծն է (550-529):

3. Խոսքը Մեդիա-Մարաստան պետության մասին է:

4. Այստեղից ևս ակնհայտ է, որ սույն վեպում Տիգրան II Մեծը չփոթված է Աքեմենյան Կյուրոսին ժամանակակից Երվանդյան Տիգրանի հետ: Իրականում Տիգրան Մեծն է գրավել հույների երկիրը՝ Սելևկյան Ասորիքը, Կիլիկիան. նա է հիմնադրել Տիգրանակերտ քաղաքը: Հետևաբար, այս վեպի մեջ Տիգրանին տրված «Մեծն Տիգրան», «բազմաբիրաւոր և հաղթող աշխարհակալ» կոչումները վերաբերում են ոչ թե Տիգրան Երվանդյանին, այլ Տիգրան II Մեծին:

5. Զինվորներ, որոնք զրահ կամ վահան չէին կրում:

6. Հին հայկական երաժշտական գործիք:

7. **Աժդահակ** - առասպելական կերպար, պարսկա-հնդկական վիշապի առասպելի հերոս (Աժի Դահակա՝ վիշապ Դահակ): Ըստ առասպելի, վիշապ Դահակը կռվում է հերոսների կամ աստվածների դեմ և սպանվում (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. I, ԳԱ հրատարակչություն, էջ 482): Խորենացու տվյալ կոնտեքստում Աժդահակի կերպարը մարմնավորում է և՛ վիշապի, և՛ Մարաց թագավոր Աժդահակ-Աստիագեսին:

8. Ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, Տիգրանի և Աժդահակի վեպի աղբյուրը Մարաբան չէ, ուստի դժվար է ասել, թե տվյալ դեպքում նկատի ունի Պատմահայրը. գուցե «Հիսումն Պիտոյից» չափածո երկի անհայտ հեղինակին,

*որը Խորենացու պնդմամբ, հագներգություններ է գրել Տիգրան Երվանդյանի մասին:*

*9. Այստեղ՝ Մարաց կամ Պարսից թագուհի, Մեծ Տիկին:*

*10. Նկատի ունի Տիգրան Երվանդյանին: Խորենացին (ինչպես նաև նրան հետևող հայ մատենագիրներն ու որոշ պատմաբաններ) Հայկից սերված հայ նահապետներին և սրանց սերունդներին հորջորջում է Հայկազունի կամ Հայկազանց:*

*11. Տիգրան Երվանդյանի և Կյուրոսի մտերմության, «վիշապազուն» մար Աժդահակի դեմ Տիգրանի մղած պայքարի վիպական այս շարքում հեռավոր արձագանքներ են պահպանվել Ք. ա. VI դարի 50-ական թվականների հայ-մարական փոխհարաբերությունների մասին: Այն ժամանակ, երբ Կյուրոսը ապստամբեց Աստիագես թագավորի դեմ և եռամյա պայքարից հետո (553-550) կործանեց մարական պետությունը, Տիգրան Երվանդյանը, որը Կյուրոսի մտերիմն էր ու որսակիցը (տե՛ս 235-րդ էջ, ծան. № 1) դաշնակցում է վերջինիս: Մարական թագավորության անկումից հետո, Տիգրանը վերականգնում է Հայաստանի անկախությունը:*

*Այսպիսով, Քսենոփոնի հետ մեկտեղ, Տիգրանի և Աժդահակի առասպելախառն այս վեպը ևս, պատմական կարգի հիշողություններ է հասցրել մեզ Երվանդունիների հայկական հնագույն պետության մասին:*

## ԱՔԵՄԵՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ԴԵՄ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԻ ԱՐՏԱՑՈԼՈՒՄԸ ԲԱՀԻՍՏՈՒՆՅԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

***Բեհիստունյան (կամ բիսեթունյան, բիստունյան) արձանագրությունը հայ ժողովրդի հնագույն պատմության կարևորագույն սկզբնաղբյուրներից մեկն է: Այն փորագրված է Բեհիստուն բարձրադիր ժայռի վրա՝ ներկայիս Քերմանշահ քաղաքից ոչ հեռու և հանդիսանում է հին պարսկական սեպագիր արձանագրություններից մեծագույնն ու կարևորագույնը: Այս արձանագրությունը թողել է պարսից Դարեհ I Վշտասպյան թագավորը (522–486)՝ իր իշխանության հենց սկզբին:***

***Երեք լեզուներով (հին պարսկերեն, էլամերեն և աքքադերեն) Դարեհը փորագրել է տվել Կյուրոս Մեծի մահից հետո (Ք. ա. 529 թ.) Պարսկաստանում սկսված խառնաշփոթ վիճակի, գահակալական կռիվների և պարսից տիրակալության դեմ ոտքի ելած մի շարք ժողովուրդների ու ցեղերի (այդ թվում և հայերի) ապստամբությունների ճնշման նկարագիրը:***

***Արձանագրության ամբողջական բնագիրն առաջին անգամ վերծանել ու հրատարակել է Հենրի Ռաուլինսոնը: Ստորև բերված հատվածները տրվում են արձանագրության հայերեն ամբողջական թարգմանությունից, որ կատարել է Գ. Մ. Նալբանդյանը («Դարեհ Վշտասպի Բիսեթունյան արձանագրությունը», Երևան, 1964):***

*§ 6*

*Դարեհ թագավորն ասում է. - Սրանք են այն երկրները, որ իմ հպատակը եղան, Ահուրամազդայի[1] շնորհիվ ես նրանց թագավորն եմ. Փարս, Խուզիան[2], Բաբելոն, Ասուրեստան, Արաբիա, Մուդրայ[3], (այն երկրները), որ ծովում են, Սպարդա[4], Իոնիա[5], Մեդիա, Արմինա[6], Կապադովկիա, Պարթևստան, Զրանկա[7], Հարուիվա[8], Խորեզմ, Բակտրիա, Սոգդ, Գանդհարա, Սագաստան[9], Սատագուշ[10], Արախոզիա (Հարվաթ), Մակա՝ բոլորը միասին 23 երկիր:*

*§ 26*

*Դարեհ թագավորն ասում է. - Դադարշիշ անունով հայ (արմինացի) իմ ծառային[11] ես ուղարկեցի Արմինա: Այսպես նրան պատվիրեցի.«Գնա՛ և ջախջախի՛ր այդ ապստամբ բանակը, որը իրեն իմը չի ճանաչում»: Ուստի Դադարշիշը գնաց: Երբ նա հասավ Արմինա, ապստամբները հավաքվեցին և դուրս եկան Դադարշիշի դեմ (նրան) ճակատամարտ տալու համար: Արմինայի մեջ Զուզա[12] անունով մի ավան կա, ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ:*



*Դարեհ I Աքեմենյան*



Ահուրամազդան ինձ օգնեց: Շնորհիվ Ահուրամազդայի իմ բանակը բավական մարդ սպանեց ապստամբ բանակից: Թուրավահարա ամսի 8-ն էր[13], երբ այսպես ճակատամարտը տեղի ունեցավ:

§ 27

Դարեհ Թագավորն ասում է. - Երկրորդ անգամ ապստամբները հավաքվեցին և նորից դուրս ելան Դադարշիշի դեմ ճակատամարտելու:

**Հայերի պատկերաքանդակներ Պերսեպոլսից**

Տիգրա[14] անունով մի բերդ կա Արմինայում. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ: Ահուրամազդան ինձ օգնեց. Ահուրամազդայի շնորհիվ իմ բանակը այն ապստամբ բանակից բավական մարդ սպանեց: Թուրավահարա ամսի 18-ն էր[15], երբ ճակատամարտը տեղի ունեցավ:

§ 28

Դարեհ Թագավորն ասում է. - Երրորդ անգամ ապստամբները հավաքվեցին և նորից դուրս եկան Դադարշիշի դեմ ճակատամարտի: Ույամա[16] անունով մի բերդ կա Արմինայում. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ: Ահուրամազդան ինձ օգնեց: Ահուրամազդայի շնորհիվ իմ բանակը այն ապստամբ բանակից բավական մարդ սպանեց: Թաիգարշիշ ամսի 9-ն էր[17], երբ ճակատամարտը տեղի ունեցավ: Հետո Դադարշիշը մնաց Արմինայում, մինչև ես հասա Մեդիա:

§ 29

Դարեհ Թագավորն ասում է. - Այնուհետև Վաումիսա անունով պարսիկ իմ ծառային ես ուղարկեցի Արմինա (և) այսպես նրան պատվիրեցի. «Գնա՛, ջախջախի՛ր այն ապստամբ բանակը, որն իրեն իմը չի ճանաչում»: Ուստի Վաումիսան գնաց: Երբ նա հասավ Արմինա, ապստամբները հավաքվեցին և դուրս եկան Վաումիսայի դեմ ճակատամարտի: Ասուրեստանում Իզալա[18] անունով մի վայր կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ: Ահուրամազդայի շնորհիվ իմ բանակը այն ապստամբ բանակից բավականին մարդ սպանեց: Անամակա ամսի 15-ն էր[19], երբ ճակատամարտը տեղի ունեցավ:

§ 30

Դարեհ Թագավորն ասում է. - Ապստամբները երկրորդ անգամ հավաքվեցին (և) դուրս եկան Վաումիսայի դեմ ճակատամարտի: Արմինայում Աուտիարա[20] անունով մի գավառ կա. այնտեղ նրանք ճակատամարտ տվեցին: Ահուրամազդան ինձ օգնեց. Ահուրամազդայի շնորհիվ իմ բանակը այն ապստամբ բանակից բավականին մարդ սպանեց: Թուրավահարա ամսի[21] վերջն էր, երբ ճակատամարտը տեղի ունեցավ: Հետո Վաումիսան մնաց Արմինայում, մինչև ես հասա Մեդիա:

*1. **Ահուրամազդա** (Ահուրա Մազդա) - իրանական դիցարանի գերագույն աստվածը: Համապատասխանում է հայկական դիցարանի գերագույն աստված Արամազդին:*

*2. **Իմա՝** Էլամ:*

*3. **Իմա՝** Եգիպտոս:*

*4. **Իմա՝** Լիդիա:*

*5. Հին Հունաստանի փոքրասիական շրջանները:*

*6. **Արմինա** - Հայաստան. արձանագրության բաբելական (աքքադական) բնագրում ի տարբերություն հին պարսկական բնագրի «Արմինա»-ի՝ հանդիպում է Ուրաշտու, այսինքն՝ Ուրարտու ձևը, էլամական բնագրում՝ Հարմինույա:*

*7. Հունական աղբյուրներում՝ Դրանգիանա:*

*8. Հունական աղբյուրներում՝ Արիեա:*

*9. Հունական աղբյուրներում՝Սկյութիա:*

*10. Հունական աղբյուրներում՝ Սատագիդիա:*

*11. **Իմա՝** ստորադրյալ:*

*12. Ուսումնասիրողների մեծագույն մասը Զուզա ավանը տեղադրում է Հարավային Հայաստանում՝ Աղձնիք կամ Կորճայք նահանգներում:*

*13. Ըստ **Ֆ.** Յուստիի՝ 19 ապրիլի 521 թվականի, ըստ **Ֆ. Վ. Քյոնիգի**՝ 21 մայիսի 521 թվականի:*

*14. Տիգրա բերդը տեղադրվում է Աղձնիքում:*

*15. Ըստ **Ֆ.** Յուստիի՝ 29 ապրիլի 521 թվականի, ըստ **Ֆ. Քյոնիգի**՝ 31 մայիսի 521 թվականի:*

*16. Ույամա (Ուհիամա) բերդը տեղադրվում է Կորճայք նահանգում:*

*17. Ըստ **Ֆ.** Յուստիի՝ 20 մայիսի 521 թվականի, ըստ **Ֆ. Քյոնիգի**՝ 21 հունիսի 521 թվականի:*

*18. **Իզալա** (Իզալա) - ըստ Յո. Մարկվարտի, այս երկրամասը համապատասխանում է Հյուսիսային Միջագետքում գտնվող Իծալա լեռների անվանը: Ապստամբները նախահարձակ էին եղել՝ դուրս եկել Արմինայի սահմաններից և մտել Ասորեստանի տարածքը:*

*19. Ըստ **Ֆ.** Յուստիի՝ 18 հունվարի 520 թվականի, ըստ **Ֆ. Քյոնիգի**՝31 դեկտեմբերի 522 թվականի: **Ֆ.Քյոնիգի** ժամանակագրական մեկնաբանությամբ՝ **Իզալայի** ճակատամարտը ոչ թե չորրորդ ճակատամարտն էր ապստամբ հայերի և պարսիկների միջև, այլ առաջին:*

*20. **Աուտիարա** - ուսումնասիրողները սույն գավառը համապատասխան են համարում «Աշխարհացոյց»-ի Այտվանք («Այտուանք», «Ատրուանք») գավառի անվան, որը գտնվում էր պատմական Հայաստանի Կորճայք նահանգում:*

*21. Ըստ **Ֆ.** Յուստիի՝ 1 հունիսի 520 թվականի, ըստ **Ֆ. Քյոնիգի**՝ 12 հունիսի*

*521 թվականի:*

## ՀԵՐՈԴՈՏՈՍԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

### *ՀԵՐՈԴՈՏՈՍ*

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

### *Գիրք I*

*194. Այժմ ես կպատմեմ այն բանի մասին, ինչը ինձ այդ քաղաքից (Բաբելոնից - Ս. Կ.) հետո թվում է ամենազարմանալին: Նավերը, որոնցով (ասորեստանցիները) նավում են գետն ի վար դեպի Բաբելոն, կլոր են և ամբողջովին կաշեպատ: Արմենիայում, որը գտնվում է Ասորեստանից վերև, նրանք կտրում են ուռիները, (որոնցով) պատրաստում են նավի կողերը և դրանք պատում կաշվե ծածկով, նավի հատակի նման: Նրանք ոչ նավի ետնամասում են լայնացնում, ոչ էլ նրա առաջամասը նեղացնում, այլ տալիս են դրան վահանի նման կլոր ձև: Ամբողջ նավը լցնում են ծղոտով, բեռնում այն և թողնում հոսանքն ի վար: Նրանք մեծ մասամբ փոխադրում են գինի կարմիր կարասներով: Նավերը վարում են երկու լայնաբերան թիակներով կանգնած երկու մարդ. նրանցից մեկը թիակը քաշում է դեպի իրեն, մյուսը՝ հրում իրենից: Այդ նավերը պատրաստվում են և*



***Արծաթյա պտյակ Երզնկայից (Ք. ա. V դար)***

չատ խոշոր  և առավել փոքր: Դրանցից ամենախոշորներն ունեն հինգ հազար տաղանդ տարողություն[1]: Յուրաքանչյուր նավի մեջ կա մեկ կենդանի գրաստ, իսկ խոշորների մեջ՝ մի քանիսը: Նավելով Բաբելոն հասնելուց և բեռը ծախելուց հետո, նրանք վաճառքի են հանում նաև նավի կմախքը և ամբողջ ծղոտը, իսկ կաշիները բարձում են գրաստների վրա և վերադառնում արմենների մոտ: Քանզի գետն ի վեր ոչ մի կերպ հնարավոր չէ նավել՝ գետի արագության պատճառով: Այդ է պատճառը, որ նրանք նավերը պատրաստում են ոչ թե փայտից, այլ կաշվից: Երբ նրանք, գրաստները քշելով, ետ են դառնում  արմենների մոտ, նույն ձևով պատրաստում են ուրիշ նավեր:

## Գիրք III

93. Բակտրիացիներից մինչև Այգլի երկրը[2] [բնակվողները] վճարում էին 300 տաղանդ[3] հարկ. սա 12-րդ նահանգն էր: Պակտյուիկեից[4], Արմեններից[5] և հարևաններից մինչև Եվքսինոս (Պոնտոս)[6] ստացվում էր 400 տաղանդ[7]. սա 13-րդ նահանգն էր:

94. Մատիեններից[8], Սասպեյրներից[9] և Ալարոդներից[10] վրա սահմանված էր 200 տաղանդ հարկ. սա 18-րդ նահանգն էր: Մոսքերի[11], Տիբարենների[12], Մակրոնների[13], Մոսինոյկների[14] և Մարերի վրա սահմանվեց 300 տաղանդ. սա 19-րդ նահանգն էր:

1. Այսինքն՝ 151,5 տոննա: Բաբելոնական տաղանդը հավասար է 30,3 կիլոգրամի:

2. Ժամանակակից Հյուսիսային Աֆղանստանն է Վերին Ամուդարյայի հովտով հանդերձ

3. Պարսկական արծաթ տաղանդը հավասար է 32 կգ 640 գրամի:

4. Ուսումնասիրողները Պակտյուիկե երկիրը նույնացնում են Կորդուքի հետ:

5. Բնագրում՝ Ἀρμένιοι – մինչև այժմ թարգմանվել է կամ «արմեններ» և կամ՝ «Արմենիա»: Գուցե պետք է թարգմանել «Արմենիաներ», քանի որ բառը բնագրում գրված է հոգնակի թվով և ենթադրաբար կարող է վերաբերել երկու Արմենիաներին՝ հետագայի Մեծ և Փոքր, կամ լինել «Հայք» հոգնակի ձևի հունարեն թարգմանու - թյունը:

6. Այսինքն՝ Սև ծով:

7. Մոտավորապես 1.209.600 ոսկի ռուբլի:

8. Մատիենները բնակվել են Մեծ Զաբի վերին հոսանքում՝ Վանա և Ուրմիա լճերի միջև: Մատիենեն նույնացվում է ուրարտական արձանագրությունների Մանա երկրի հետ:

9. Սասպեյրները ապրում էին Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմուտքում՝ Ճորոխ գետի վերին հոսանքից դեպի արևելք և հարավ-արևելք:

*10. **Ալարոդներ** – ցեղեր, որոնք բնակվում էին Արարատյան դաշտում, ինչպես նաև Վանա լճի և Արաքս գետի միջև ընկած տարածքում: Կարծիք կա, որ համարվում են ուրարտացիների հետնորդները:*

*11. **Մոսքեր** – ցեղեր, որոնք բնակվում էին Արևելյան Տիգրիսի հովտում: Հավանաբար հետնորդներն են մուշքերի (փռյուգա – հայկական ցեղերի):*

*12. Տիբարենները բնակվում էին Սև ծովի մերձափնյա շրջանում, նրանց նույնացնում են սեպագիր արձանագրություններում հիշատակված տաբալների հետ:*

*13. Մակրոնները բնակվում էին Ճորոխի ստորին ավազանում:*

*14. **Մոսինոյկներ** – հունարեն բառացի նշանակում է «փայտե կառույցներում ապրողներ»: Թերևս սա տեղական բառի՝ հույների կողմից արված ժողովրդական ստուգաբանությունն է: Ստրաբոնը նույն այդ ցեղերին անվանում է հեպտակոմետներ, որը նշանակում է՝ «յոթ գյուղերում ապրողներ»: Մոսինոյկները բնակվում էին մակրոններից արևմուտք՝ մերձսևծովյան անտառախիտ լեռներում:*

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԸՍՏ ՔՍԵՆՈՓՈՆԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅԱՆ

***Քսենոփոն Աթենացին հունական վարձկան զորաբանակի կազմում մասնակցել է փոքրասիական երկրամասերի պարսկական սատրապ, պարսից արքաեղբայր Կյուրոս Կրտսերի ձեռնարկած ռազմական արշավանքին դեպի Պարսկաստան (Ք. ա. 401 թ.): Կյուրոսի նպատակն էր՝ տապալել իր եղբայր Արտաքսերքսես II Մնեմոնին (404-358) և տիրանալ գահին: Արշավանքը անհաջողությամբ է ավարտվում. Կունաքսայի ճակատամարտում Կյուրոս Կրտսերը սպանվում է:***

***Տասհազարանոց վարձկան հունական զորաբանակը, որի մեջ էր նաև Քսենոփոնը, ստիպված է լինում բռնել դեպի հայրենիք նահանջի ուղին: Նահանջող հույները կտրում անցնում են նաև Հայկական լեռնաշխարհը՝ հարավից հյուսիս-արևմուտք, Վանա լճից հարավ ընկած կարդուխների երկրից՝ Հայաստանի վրայով դեպի Սև ծովի ափերը: Այս նահանջի նկարագրությունը Քսենոփոնը տվել է իր ստեղծագործությունների գլուխգործոց «Անաբասիս» (հայ գրականության մեջ՝ «Նահանջ բյուրոց» երկասիրության մեջ):***

***Մեծ է «Անաբասիսի» արժեքը որպես պատմական սկզբնաղբյուրի: Հայ ժողովրդի պատմության մի ամբողջ դարաշրջան իր լուսաբանումն է ստանում շնորհիվ այս երկի հեղինակի արժանահավատ վկայությունների, հեղինակ, որը գրել է իր տեսածի ու լսածի անմիջական տպավորության ներքո:***

***Ստորև բերված հատվածները տրվում են ըստ Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանության (տե՛ս Քսենոփոն, Անաբասիս, Երևան, 1970), որը կատարված է «***Xenophontis Expedito Cyri, recensuit **Guilelmus Gemoll.** Editio minor. Bibliotheca Teubneriana, Lipsiae, 1910» ***Հրատարակությունից:***

*ՔՍԵՆՈՓՈՆ*

*ԱՆԱԲԱՍԻՍ*

## *Գիրք III, գլուխ V*

*(17)... Զորավարները[1] որոշեցին, որ պետք է իջնել լեռների միջով դեպի կարդուխների երկիրը[2]. քանզի ասել էին, թե նրանց երկրով անցնելուց հետո կհասնեն Արմենիա, որին իշխում էր Օրոնտասը[3] և որը մեծ էր ու հարուստ:*

## *Գիրք IV, գլուխ III*

*(1) Այդ օրը հելլենները դարձյալ մնացին գյուղերում, որոնք գտնվում էին Կենտրիտես գետի[4] հարթավայրից վերև: Գետի լայնքը համարյա երկու պլեթրոն է[5]. այն սահման է Արմենիայի և կարդուխների երկրի միջև: Հելլեններն այստեղ ուրախացած շունչ քաշեցին դաշտ տեսնելով: Գետը վեց կամ յոթ ասպարեզ հեռու էր կարդուխների լեռներից: (2) Այնժամ նրանք մեծ գոհունակությամբ բանակեցին, և՛ պարեն ունենալով, և՛ անցած շատ նեղություններ վերհիշելով: Քանզի այն յոթ օրը, որ նրանք անցան կարդուխների երկրի միջով, միշտ ստիպված էին եղել կռվելու և ենթարկվել էին այնքան մեծ աղետների, որքան չէին պատճառել արքան[6] ու Տիսսափեռնեսը[7] միասին վերցրած: Այժմ՝ ազատված այդ ամենից, նրանք հաճույքով քնեցին:*

*(3) Լուսաբացին գետի այն կողմը նրանք նկատեցին սպառազինված հեծյալների, որոնք պատրաստ էին խոչընդոտելու գետանցը, իսկ հեծյալներից վերև, բլուրների վրա շարվել էին հետևակ զորքեր,որոնք պետք է արգելեին հելլեններին Արմենիա դուրս գալ: (4) Սրանք Օրոնտասի և Արտուխասի[8] արմեններն էին և մարդերն[9] ու խալդայները[10] վարձկան: Ասում էին, թե խալդայները ազատ են և խիզախ. նրանք զինված էին հյուսկեն երկայն վահաններով և նիզակ-*

*ներով: (5) Բլուրները, որոնց վրա նրանք դասավորված էին, գետից երեք, թե չորս պլեթրոն հեռու էին գտնվում: Տեսանելի միակ մի ճանապարհ կար, որը վեր էր տանում և կարծես ձեռակերտ լիներ: Հելլենները փորձեցին այստեղ իսկ գետն անցնել:*

## Գլուխ IV

*(1) Գետն անցնելուց հետո հելլենները կեսօրվա շուրջ դասավորվեցին ու ճանապարհ ընկան Արմենիայի միջով, և ամբողջ ժամանակ դաշտավայրով ու հողաբլուրներով գնալով, անցան ոչ պակաս քան հինգ փարսախ[11]: Քանզի կարդուխների դեմ կռիվների պատճառով գետի մոտ գյուղեր չկային: (2) Այն գյուղը, ուր նրանք հասան, մեծ էր և ուներ ապարանք սատրապի[12] համար, իսկ տների մեծագույն մասի վրա կային աշտարակներ: Այստեղ նաև պարենն առատ էր: (3) Այստեղից առաջ գնացին երկու կայան՝ տասը փարսախ, մինչև անցան Տիգրիս գետի ակունքը: Այնուհետև գնացին երեք կայան՝ տասնհինգ փարսախ, մինչև Տելեբոաս գետը[13]: Այն գեղեցիկ էր, բայց ոչ մեծ, իսկ գետի մոտակայքում կային շատ գյուղեր: (4) Այս վայրը կոչվում է Արևմտյան Արմենիա: Նրա հյուպարքոսն էր Տիրիբազոսը[14], որը լինելով արքայի բարեկամը, երբ ինքը ներկա էր գտնվում, ուրիշ ոչ ոք արքային չէր նստեցնում: (5) Սա հեծյալների ուղեկցությամբ մոտեցավ ու թարգման ուղարկելով ասաց, թե ցանկանում է բանակցել հրամանատարների հետ: Զորավարները որոշեցին լսել նրան. ուստի մոտենալով մինչև լսելի տարածություն, հարցրին, թե ի՞նչ է կամենում: (6) Նա ասաց, թե ցանկանում է պայմանավորվել, որպեսզի ոչ ինքը վնասի հելլեններին, ոչ էլ նրանք այրեն տները. իսկ պարեն կարող են վերցնել ինչքան անհրաժեշտ է: Զորավարները համաձայնվեցին այդ բոլորին և այդպիսի պայման կնքեցին:*

*(7) Այստեղից ընթացան երեք կայան դաշտավայրի միջով՝ տասնհինգ փարսախ. և Տիրիբազոսը իր զորքով հետևում էր նրանց մոտ տասը ասպարեզ հեռավորության վրա: Եվ նրանք հասան ապարանքի մոտ, որի շուրջը բազմաթիվ գյուղեր կային, լի զանազան պարենով: (8) Երբ արդեն բանակել էին, գիշերը առատ ձյուն եկավ. ուստի և լուսաբացին որոշեցին զորաշարքերը և զորավարներին տեղավորել գյուղերում, քանի որ ոչ մի թշնամի չէր երևում և կարծում էին, թե իրենք ապահով են ձյան առատության պատճառով: (9) Այստեղ նրանք արդեն ունեին անհրաժեշտ բոլոր տեսակի պարենի և բարիքների առատություն. մորթելու անասուններ, հաց, անուշահոտ հին*

*գինիներ, չամիչ, ամեն տեսակ ընդեղեն: Բայց ոմանք, որ բանակից դուրս գալով Թափառել էին, պատմում էին, Թե իբր գիշերը տեսել էին փայլող բազմաթիվ կրակներ: (10) Ուստի զորավարները վտանգավոր Համարեցին տներում ցրված մնալը և որոշեցին զորքը դարձյալ ի մի Հավաքել: Ուստի և բոլորը Հավաքվեցին. մանավանդ, որ Թվում էր, Թե եղանակը պարզվում է: (11) Մինչ նրանք այստեղ գիշերում էին, այնքան առատ ձյուն տեղաց, որ ծածկեց և՛ զենքերը, և՛ պառկած մարդկանց. ձյունը կաշկանդեց նաև անասունների ոտքերը ու շատ դժվար էր վեր կենալը, քանզի եկած ձյունը, քանի դեռ չէր Հալվել, տաքացնում էր պառկածներին: (12) Իսկ երբ Քսենոփոնը[15] Համարձակվեց մերկ վեր կենալ ու փայտ ջարդել, իսկույն մեկ ուրիշը ևս վեր կենալով, վերցրեց կացինը նրա ձեռքից և սկսեց ինքը ջարդել: ԱյնուՀետև վեր կացան նաև ուրիշները և կրակ վառեցին ու յուղ քսեցին: (13) Քանզի այստեղ յուղի շատ տեսակներ կային, որ գործածում էին ձիԹայուղի փոխարեն՝ խոզաճարպ և քնջուԹի և դառն նշի և բևեկնի յուղ: Կար նաև սրանցից պատրաստված մեռոն:*

*(14) ԱյնուՀետև որոշվեց դարձյալ տեղավորվել [գյուղերի] տներում: Այնժամ զինվորները մեծ աղմուկով և ուրախուԹյամբ դիմեցին դեպի բնակարաններն ու պարենամԹերքը: Իսկ նրանք, ովքեր նախապես Հեռանալիս անմտաբար այրել էին տները, պատժվեցին նրանով, որ վատ տեղավորվեցին: (15) ԱյնուՀետև գիշերով Դեմոկրատես Տեմնոսացուն մի ջոկատ Հանձնեցին և ուղարկեցին դեպի լեռները, որտեղ, ինչպես պատմել էին բանակից դուրս Թափառած զինվորները, նկատել էին կրակներ. քանզի Դեմոկրատեսը նախկինում ևս այդպիսի տվյալներ ստուգել էր, եղածը՝ որպես եղած, իսկ չեղածը՝ որպես չեղած: (16) Սա գնաց, և վերադառնալով Հայտնեց, Թե*



**Արևմտյան Հայաստանի կառավարիչ Տիրիբազոս**

*կրակներ չի տեսել. սա իր հետ բերեց իր բռնած մարդուն, որը կրում էր պարսկական աղեղ, կապարճ և երկսայր տապար, ինչպիսին ունեն ամազոնուհիները*[16]*: (17) Երբ սրան հարցրին, թե ո՞րտեղացի է, պատասխանեց, թե պարսիկ է ու գալիս է Տիրիբազոսի բանակից, պաշար վերցնելու համար: Հելլենները հարցրին նաև, թե ինչքա՞ն է զորքը և ի՞նչ նպատակով է հավաքված: (18) Նա ասաց, որ Տիրիբազոսն է, որն ունի և՛ իր զորքը, և՛ վարձկան խալյուբներ*[17] *ու տաոխներ*[18]*: Եվ նա պատրաստվում է,- շարունակեց պարսիկը,- հելլենների վրա հարձակվել լեռն անցնելու ժամանակ կիրճերում, որտեղ և գտնվում է միակ ճանապարհը:*



**Հայաստանի սատրապ – Թագավոր Օրոնտաս – Երվանդ II**

*(19) Այս լսելով, զորավարները որոշեցին զորաժողով գումարել. այնուհետև պահակախումբ թողնելով ու մնացողների վրա Սոփայնետոս Ստյումփալացուն զորապետ նշանակելով, իսկույն մեկնեցին, ուղեցույց ունենալով գերված մարդուն: (20) Երբ նրանք անցնում էին լեռները, պելտաստները*[19] *առաջ գնալով ու նկատելով զորակայանը, չսպասեցին հոպլիտների*[20] *հասնելուն, այլ աղաղակելով վազեցին դեպի զորակայանը: (21) Իսկ բարբարոսները աղմուկը լսելով, չդիմացան ու փախան: Բայց բարբարոսներից ոմանք սպանվեցին, և ձեռք բերվեց մոտ քսան ձի, միաժամանակ գրավվեց Տիրիբազոսի վրանը և նրա մեջ արծաթե ոտքերով մահիճներ և ըմպանակներ, ինչպես նաև մարդիկ, որոնք ասացին, թե հացարարներ են ու մատռվակներ: (22) Այս իմանալուց հետո հոպլիտների զորավարները որոշեցին որքան կարելի է շուտ վերադառնալ զորակայան, որպեսզի այնտեղ մնացածների վրա որևէ հարձակում չկատարվի: Եվ իսկույն շեփորը նահանջի ազդանշան տվեց ու վերադառնալով նույն օրը հա-*

*սան բանակատեղի։*

## *Գլուխ V*

*(1) Հաջորդ օրը որոշեցին ուղևորվել ինչքան հնարավոր է արագ, նախքան թշնամու նորից հավաքվելը և կիրճերը գրավելը։ Հելլենները պատրաստվելով ճանապարհվեցին խոր ձյան միջով, ունենալով շատ առաջնորդներ։ Եվ նույն օրն իսկ նրանք անցնելով լեռնագագաթը, որտեղ Տիրիբազոսը մտադրվել էր հարձակում գործել, բանակեցին։ (2) Այստեղից առաջ անցան երեք կայան ամայի տարածություններով՝ տասնհինգ փարսախ, մինչև Եփրատ գետը, և այն անցան թրջվելով մինչև պորտը։ Պատմում էին, թե ակունքները հեռու չէին։*

*(9) Մինչ առաջ էին ընթանում, Խեյրիսոփոսը[21] աղջամուղջին հասավ մի գյուղ և ամրության առաջ, աղբյուրի մոտ պատահեց գյուղի կանանց և աղջիկների, որոնք ջուր էին տանում։ (10) Սրանք հարցրին հելլեններին, թե ովքե՞ր են։ Իսկ թարգմանը պարսկերեն ասաց, որ թագավորի կողմից գնում են սատրապի մոտ։ Եվ կանայք պատասխանեցին, թե նա այստեղ չէ, այլ գտնվում է գրեթե մեկ փարսախ հեռու։ Այնժամ, քանի որ ուշ էր, հելլենները ջուր տանողների հետ մտան ամրությունից ներս՝ գեղջավագի մոտ։ (11) Այսպիսով, Խեյրիսոփոսը և զինվորներից նրանք, ովքեր կարողացան, բանակեցին այստեղ. իսկ մյուսները, որոնք չէին կարողացել ճնապարհը մինչև վերջ գալ, գիշերեցին անսնունդ և անկրակ. այնժամ ևս զինվորներից ոմանք մահացան։*

*(22) Մինչ այդ Խեյրիսոփոսը գյուղում եղողներից ոմանց ուղարկեց իմանալու, թե ի՞նչ վիճակում են ետևում եղողները։ Վերջինները տեսնելով նրանց, ուրախացան և հիվանդներին նրանց հանձնեցին զորակայան տանելու համար. իսկ իրենք առաջ գնալով, քսան ասպարեզ չանցած, հասան այն գյուղը, որտեղ իջևանել էր Խեյրիսոփոսը։ (23) Երբ բոլորը հավաքվեցին իրար մոտ, որոշեցին, որ ապահով կլինի զորամասերը գյուղերում տեղավորել։ Եվ Խեյրիսոփոսը մնաց այնտեղ, իսկ մյուսները վիճակահանությամբ բաժանեցին իրենց տեսած գյուղերը և յուրաքանչյուրը այնտեղ մեկնեց իր զորամասի հետ։ (24) Այնժամ վաշտապետ Պոլյուկրատես Աթենացին խնդրեց թույլ տալ իրեն առաջ գնալ, ու վերցնելով իր հետ արագաշարժներին, վազեց դեպի այն գյուղը, որը վիճակով ստացել էր Քսենոփոնը, ու գերեվարեց այնտեղ գտնված բոլոր գյուղացիներին և գեղջավագին, նաև թագավորին որպես տուրք՝ սնուցվող տասնյոթ մտրուկների, ինչպես և գեղջավագի դստեր, որը իններորդ օրն էր, ինչ ամուսնացած էր։ Իսկ նրա ամուս -*

*սինը գնացել էր նապաստակ որսալու և չգերվեց գյուղում:*

*(25) Տներն այստեղ գետնափոր էին, մուտքը ինչպես ջրհորի բերան, իսկ ներքևի մասն ընդարձակ: Մինչդեռ անասունների համար մուտքը փորված էր [հողի մեջ], մարդիկ ցած էին իջնում աստիճաններով: Տներում կային այծեր, ոչխարներ, եզներ, հավեր և սրանց ձագերը: Բոլոր անասունները ներսում կերակրվում էին խոտով: (26) Այնտեղ կար նաև ցորեն և գարի և ընդեղեն և կրատերների[22] մեջ գարուց պատրաստած գինի, որի երեսին լողում էին գարու հատիկներ. կրատերների մեջ կային նաև եղեգներ՝ մեծ ու փոքր, առանց ծնկի: (27) Ծարավելու դեպքում մարդ պետք է այդ եղեգի ծայրը բերանին դներ ու ծծեր: Եվ այն շատ թունդ էր, եթե ջուր չխառնեին. իսկ սովոր մարդու համար շատ ախորժելի ըմպելիք էր:*

*(28) Այս գյուղի ավագին Քսենոփոնը սեղանակից դարձրեց ու նրան խորհուրդ տվեց չվհատվել, ասելով, որ նա իր զավակներից չի զրկվի և փոխարենը հեռանալիս իրենք նրա տունը կլցնեն մթերքներով, եթե նա լավ ծառայություն մատուցի զորքին և դառնա ուղեցույց, մինչև իրենք կհասնեն մի այլ ժողովրդի երկիր: (29) Իսկ նա խոստացավ այդ բոլորն անել, ու բարյացակամ դառնալով, հայտնեց, թե որտեղ է հորած գինին: Այդ գիշեր բոլոր զինվորները տեղավորվելով տներում՝ քնեցին ամեն տեսակ պարենի առատության մեջ, անդուլ հսկողության տակ պահելով գեղջավագին ու նրա որդիներին:*

*(30) Հաջորդ օրը Քսենոփոնը գեղջավագին իր հետ վերցնելով, գնաց Խեյրիսոփոսի մոտ: Ուր որ գյուղն էր հանդիպում, գնում էր գյուղերում եղողների մոտ և ամենուրեք նրանց գտնում էր կերուխումի մեջ, և ոչ մի տեղ նրան բաց չթողեցին, մինչև ճաշ չմատուցեցին: (31) Չկար մի տեղ, որ սեղանին միաժամանակ չդնեին գառան, ուլի, խոզի, հորթի և հավի միս, մեծ քանակությամբ ցորենի ու գարու հացի հետ: (32) Ու եթե որևէ մեկը մտերմաբար ցանկանում էր խմել մյուսի կենացը, ապա նրան քարշ էր տալիս կրատերի մոտ և կռանալով այնտեղից պետք է խմեր եզան նման ծծելով: Եվ գեղջավագին թույլ տվեցին վերցնելու այն, ինչ ցանկանում էր: Բայց նա ոչինչ չէր վերցնում, այլ երբ որևէ տեղ տեսնում էր իր տոհմակիցներից մեկն ու մեկին, նրան միշտ վերցնում էր իր հետ: (33) Երբ եկան Խեյրիսոփոսի մոտ, սրանց ևս գտան խնջույքի մեջ, պսակված չոր խոտե պսակներով. նրանց սպասավորություն էին անում արմենների երեխաները բարբարոսական զգեստներ հագած, իսկ երեխաներին նրանք նշաններով ցույց էին տալիս, ինչպես մունջերի, թե ինչ անել:*

*(34) Խեյրիսոփոսն ու Քսենոփոնը փոխադարձաբար իրար ողջու-*

նելուց հետո սկսեցին միասին հարցուփորձել գեղջավագին պարսկերեն խոսող թարգմանի միջոցով, թե այդ ի՞նչ երկիր է: Նա ասաց, թե Արմենիան է: Եվ դարձյալ հարցրին, թե ձիերը ո՞ւմ համար են բուծվում: Նա ասաց. թե՝ արքայի համար իբրև տուրք[23]: Ասաց նաև, որ հարևան երկիրը խալյուբների երկիրն է և ցույց տվեց, թե որն է այնտեղ տանող ճանապարհը: (35) Այնուհետև Քսենոփոնը վերադարձավ, գեղջավագին  էլ վերադարձնելով նրա ընտանիքին, և դեռ առաջներում իր ավար վերցրած պառավ ձին նվիրեց գեղջավագին, որպեսզի սնուցի ու զոհաբերի, քանզի լսել էր, որ այն նվիրաբերված էր Հելիոսին[24] և միաժամանակ վախենում էր, որ այն կսատկի, քանզի ճանապարհից խիստ հյուծվել էր: Ինքը վերցրեց մտրուկներից մեկը, և մյուս [զորավարներին ու]  վաշտապետներին էլ տվեց մեկական մտրուկ: (36) Այստեղի ձիերը փոքր էին պարսկականներից, բայց ավելի աշխույժ: Այստեղ իսկ գեղջավագը սովորեցրեց ձիերի ու գրաստների ոտքերին, ձյան միջով գնալիս, պարկեր փաթաթել. քանզի առանց պարկերի անասունները մինչև փորը խրվում էին ձյան մեջ:

## Գլուխ VI

(1) Երբ արդեն ութերորդ օրն էր, Քսենոփոնը գյուղապետին որպես ուղեցույց հանձնեց Խեյրիսոփոսին, իսկ նրա տնեցիներին բաց թողեց, բացի նոր չափահաս դարձող որդուց: Սրան հանձնեց Պլեյսթենես Ամփիպոլսեցու հսկողությանը, որպեսզի եթե գեղջավագը լավ առաջնորդելու լինի, ապա սրան էլ վերցնելով, վերադառնա: Ու նրա տունը ինչքան կարող էին ավելի շատ մթերքներ տանելով, նրանք պատրաստվեցին ու ճանապարհ ընկան: (2) Ձյան միջով  նրանց առաջնորդում էր կապերից արձակված գեղջավագը: Եվ արդեն երրորդ կայանի ճանապարհին էին, երբ Խեյրիսոփոսը զայրացավ նրա վրա այն պատճառով, որ իրենց չի առաջնորդել դեպի գյուղերը: Իսկ նա ասում էր, թե այս վայրում գյուղեր չկան: Խեյրիսոփոսը նրան ծեծեց, բայց չկապեց: (3) Այդ բանից հետո գեղջավագը գիշերը փախավ, լքելով իր որդուն: Այս դեպքը՝ ուղեցույցի նկատմամբ վատ վերաբերմունքը և անհոգությունը, միակ գժտությունը եղավ ամբողջ ճանապարհի ընթացքում Խեյրիսոփոսի և Քսենոփոնի միջև: Իսկ Պլեյսթենեսը սիրեց (գեղջավագի) տղային և նրան իր տունը բերելով, վերաբերվում էր ամենայն մտերմությամբ:

(4) Այնուհետև առաջ գնացին յոթ կայան՝ օրական հինգ փարսախ, Փասիս գետի մոտ[25], որի լայնքը մոտ մեկ պլեթրոն էր: (5) Այս-

*տեղից առաջ գնացին երկու կայան՝ տասը փարսախ. և լառնանցքով դեպի դաշտ իջնելիս նրանց դեմ ելան խալյուբները, տաոխները և փասիանները*[26]*:*

## *Գլուխ VII*

*(1) Այստեղից նրանք գնացին դեպի տաոխները հինգ կայան՝ երեսուն և հինգ փարսախ, և նրանց պարենը սպառվեց. քանզի տաոխները ապրում էին ամրացված վայրերում, որտեղ և փոխադրել էին իրենց ամբողջ պարենամթերքը: (2) Երբ (հելլենները) հասան մի վայր, որը քաղաք չէր և որտեղ տներ էլ չկային, բայց ուր հավաքվել էին այրեր և կանայք և շատ անասուններ, Խեյրիսոփոսը առանց սպասելու, խկույն հարձակվեց նրանց վրա, և երբ առաջին ջոկատը հոգնեց, մյուսն անցավ հարձակման, հետո մեկ ուրիշը. քանզի անհնար էր ի մի հավաքվելով այն պաշարել, որովհետև շուրջանակի գահավեժ վայրում էր այն գտնվում:*

*(3) Երբ Քսենոփոնը վերջապահների և պելտաստների ու հոպլիտների հետ տեղ հասավ, ապա Խեյրիսոփոսը ասաց. «Դու լավ ժամանակին եկար. այս վայրը պետք է գրավել. քանզի զորքը պարեն չի ունենա, եթե մենք այս վայրը չգրավենք»: (4) Այնժամ նրանք խորհրդակցեցին. և Քսենոփոնի այն հարցին, թե ի՞նչն է խանգարում խուժելու այնտեղ, Խեյրիսոփոսը պատասխանեց. «Միայն այս ճանապարհն է, որը դու տեսնում ես, տանում այնտեղ. ու եթե որևէ մեկը փորձի այստեղով անցնել, ապա անցումի վրա բարձրացող ժայռից քարեր են գլորում ցած: Ահա վիճակը նրա, ով հարվածի հանդիպի»: Այս ասելով նա միաժամանակ ցույց տվեց սրունքները և կողերը փշրված զինվորների: (5) «Իսկ եթե սպառեն եղած քարերը,– ասաց Քսենոփոնը, – ապա մեր անցումը արգելող որևէ բան մնո՞ւմ է դեռ: Չէ՞ որ մեր դիմաց փոքրաթիվ մարդիկ են, և նրանցից սոսկ երկուսը կամ երեքն են զինված: (6) Այն տարածությունը, որը մենք պետք է անցնենք քարկոծման ենթարկվելով, ինչպես ինքդ էլ տեսնում ես, մեկ և կես պլեթրոն է. դրանից մոտ մեկ պլեթրոնը ծածկված է իրարից հեռու աճած բարձր սոճիներով, որոնց ետև կանգնած մարդիկ ի՞նչ վնաս կարող են կրել շպրտված կամ գլորված քարերից: Մնում է կես պլեթրոն, որը պետք է անցնել, երբ քարերը դադարեն գլորվելուց»: (7) «Բանն էլ այն է, – պատասխանեց Խեյրիսոփոսը, – որ երբ շարժվում ենք դեպի ծառերը, խկույն մեծ քանակությամբ քարեր են թափվում»: «Այդ էլ մեզ պետք է, – ասաց Քսենոփոնը, – այդպիսով*

*նրանք ավելի չուտ կսպառեն քարերը: Ուրեմն գնանք այնտեղ, որտեղից քիչ տարածություն է մնում մեզ վազել դեպի առաջ, եթե այդ հաջողվի, և որտեղից հեշտ է նահանջել, եթե դրա կարիքն զգացվի»:*

*(8) Այնժամ առաջ անցան Խեյրիսոփոսը և Քսենոփոնը, նաև վաշտապետ Կալլիմաքոս Պառասիացին. քանզի այդ օրը նրան էր հանձնված վերջապահ վաշտապետների հրամանատարությունը. իսկ մյուս վաշտապետները մնում էին ապահով վայրում: Այնուհետև ծառերի տակ վազեցին մոտ յոթանասուն մարդ, ոչ բոլորը միասին, այլ մեկ առ մեկ, յուրաքանչյուրը պաշտպանվելով ինչպես կարող էր: (9) Իսկ Ագասիաս Ստյումփալացին և Արիստոնիմոս Մեթիդրիացին, որոնք նույնպես վերջապահների վաշտապետներից էին, և ուրիշները ևս դիրքավորվեցին ծառերից հեռու. քանզի ծառերի տակ կարող էր ապահով կանգնել ոչ ավելի, քան մեկ վաշտ: (10) Այստեղ էլ Կալլիմաքոսը մի խորամանկություն արեց. նա առաջ էր վազում երկու կամ երեք քայլ այն ծառից, որի տակ ապաստանել էր, իսկ երբ քարեր էին թափում, նորից բարեհաջող ետ էր վերադառնում: Եվ նրա ամեն մի արտելքին ցած էր թափվում ավելի քան տասը սայլ քար: (11) Ագասիասը տեսնելով, թե ինչ էր անում Կալլիմաքոսը ամբողջ զորքի աչքերի առաջ և վախենալով, որ չլինի թե առաջինը նա ներխուժի ամրությունից ներս, առանց զգուշացնելու իր մոտ եղող Արիստոնիմոսին, ոչ իսկ Եվրիլոքոս Լուսիացուն, որոնք իր ընկերներն էին, ոչ էլ որևէ մեկ ուրիշին, ինքը վազեց ու բոլորից առաջ անցավ: (12) Կալլիմաքոսը տեսնելով նրան իր մոտով առաջ վազելիս, բռնեց նրա վահանը: Այնժամ նրանից առաջ անցավ Արիստոնիմոս Մեթիդրիացին և նրանից հետո Եվրիլոքոս Լուսիացին. քանզի նրանք բոլորը մրցում էին իրար հետ և աշխատում քաջությամբ գերազանցել մեկը մյուսին. այսպիսով գրավեցին ամրությունը: Քանզի մի անգամ որ ներխուժեցին այնտեղ, այլևս ոչ մի քար վերևից չգլորվեց: (13) Այնժամ ահավոր մի տեսարան բացվեց: Կանայք իրենց երեխաներին ցած էին նետում և նրանց ետևից իրենք ևս ցած գլորվում. նույնպես էին վարվում նաև տղամարդիկ: Այստեղ էլ վաշտապետ Էնեաս Ստյումփալացին տեսնելով մեկին, որը լավ զգեստներ էր հագած և վազում էր հավանաբար իրեն ցած նետելու, բռնեց նրան, որ թույլ չտա: (14) Բայց մարդն իր հետ քաշեց նրան և երկուսը միասին գահավիժելով ժայռերից, մահացան: Այստեղ գերի վերցվեց շատ քիչ մարդ, բայց մեծ թվով եզներ, էշեր և ոչխարներ (վերցվեցին):*

*(15) Այստեղից նրանք խալյուբների երկրի միջով գնացին յոթ կայան՝ հիսուն փարսախ: Սրանք, առավել քան բոլորը, ում երկրից ան-*

*ցել էին հելլենները, քաջ էին և ձեռնամարտի էին բռնվում: Նրանք մինչև փորը հասնող վուշե զրահներ ունեին. և զրահի եզրաթեկնների փոխարեն՝ խիտ հյուսված քուղեր: (16) Նրանք նաև ունեին սռնապաններ և սաղավարտներ և գոտուց կախած դաշույն, լակեդեմոնական կեռ դանակի[27] մեծության, որով սպանում էին ում որ հաղթել կարողանային, և կտրելով գլուխները, վերցնում էին ու գնում. և նրանք երգում էին ու պարում, երբ թշնամու տեսադաշտում էին գտնվում: Ունեին նաև մեկ ծայրով նիզակ՝ հինգ կանգուն երկարությամբ: (17) Սրանք մնում էին քաղաքավայրերում. և երբ հելլենները անցնում էին այդ տեղերով, նրանք հետևում էին անընդհատ կռվելով: Բնակվում էին ամրացված վայրերում, որտեղ հավաքել էին նաև իրենց մթերքները. այնպես, որ հելլենները այստեղից ոչինչ չկարողացան վերցնել, այլ սնվում էին այն անասուններով, որ վերցրել էին տաոխներից: (18) Նրանց մոտից հելլենները հասան Հարպասոս գետը, որի լայնքը չորս պլեթրոն էր: Այստեղից առաջ ընթացան սկյութենների[28] երկրի միջով չորս կայան՝ քսան փարսախ՝ հարթավայր տեղերով դեպի գյուղերը, որոնցում մնացին երեք օր և պարենավորվեցին:*

*1. Խոսքը նահանջող հունական բանակի զորավարների մասին է:*

*2. Քսենոփոնի նկարագրած կարդուխների երկիրը համապատասխանում է հին հայ պատմիչների մոտ հիշատակված «Կորդուք»-ին կամ «Կորդուաց» աշխարհին:*

*3. **Օրոնտաս** – Հայաստանի սատրապ Օրոնտաս-Երվանդ II-ն է (մոտ 404-360): Նա պարսից թագավոր Արտաքսերքսես Մնեմոնի մերձավորներից էր. ամուսնացել էր վերջինիս դստեր՝ Հռոդոգունեի հետ: Մասնակցել է Կյուրոս Կրտսերի խռովության ճնշմանը:*

*4. **Կենտրիտես** – միջնադարյան հայկական սկզբնաղբյուրների Ջերմ գետն է, այսինքն՝ Արևելյան Տիգրիսը (Բոհտան-սու):*

*5. Երկարության չափ, որը հավասար է մոտավորապես 30 մետրի:*

*6. Խոսքը Արտաքսերքսես II Մնեմոնի մասին է:*

*7. Տիսսափեռնեսը Դարեհ I Վշտասպյանի մերձավոր զինակից Հյուդարնեսի (Վիդարնա) որդին էր: Հայաստանի Երվանդունիներն, ըստ երևույթին, արյունակցական կապ են ունեցել Հյուդարնեսի հետ, որի մասին վկայում է Ստրաբոնը («Աշխարհագրություն», XI,14,15):*

*8. **Արտուխաս** – Երվանդ II -ի զորավարներից մեկը:*

*9. Իրանական ծագում ունեցող ցեղախմբեր, որոնք բնակվում էին Վասպուրականի հարավ-արևելքում: Հետագայում ձուլվելով հայերի հետ, կազմեցին*

*Մարդուցայք և Մարդաղի գավառները: Այստեղից էլ Մարդպետական նախարարական տունն ու մարդպետության գործակալությունը:*

*10.* ***Խալդայներ*** *– Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիսարևմտյան ծայրամասերում բնակվող ցեղախումբ, որից հետագայում առաջացավ պատմական Հայաստանի Խաղտիք երկրամասը:Պատմագիտության մեջ կատարված փորձերը՝ խալդայներին նույնացնելու ուրարտացիների հետ, այժմ վերջնականապես մերժվում են:*

*11. Երկարության չափ, որը հավասար է մոտավորապես 5,5 կիլոմետրի:*

*12. Խոսքը Հայաստանի սատրապ Երվանդ II-ի մասին է:*

*13.* ***Տելեբոաս*** *– հայկական սկզբնաղբյուրների Մեղրագետն է՝ Արածանիի ձախակողմյան վտակը (Կարա-սու):*

*14. Տիրիբազոսը Հայկական սատրապության արևմտյան երկրամասի հյուպարքոս-կառավարիչն էր, Օրոնտաս-Երվանդի ստորադասը:*

*15. Խոսքը «Անաբասիս»-ի հեղինակ Քսենոփոն Աթենացու մասին է:*

*16. Առասպելական կին ռազմիկներ, որոնց հայրենիքը հույները համարում էին Կովկասը:*

*17.* ***Խալյուբներ*** *– Սև ծովի հարավարևելյան ափերին և Բարձր Հայքի ու Փոքր Հայքի լեռներում բնակվող ցեղեր: Հունական սկզբնաղբյուրների համապատասխան տեղեկությունների քննությունը ուսումնասիրողներին բերել է այն եզրակացության, որ խալդայների և խալյուբների անվան տակ պետք է հասկանալ միևնույն ցեղախումբը (տե՛ս 254-րդ էջ, ծան. № 10):*

*18.* ***Տաոխներ*** *-խուռիական ծագում ունեցող լեռնային ցեղեր, որոնք բնակվում էին Հայկական լեռնաշխարհի հյուսիսում՝ Հարպասոս (Ճորոխ) գետի ակունքների և միջին հոսանքի շրջանում: Սրանց երկրամասը ասորեստանյան և ուրարտական արձանագրություններում հիշատակվում է Դայաենի և Դիաուխի անուններով: Տաոխների երկրի անունից ծագել է Մեծ Հայքի Տայք աշխարհի անունը:*

*19.* ***Պելտաստներ*** *– թեթև կլոր վահան (պելտե) կրող զինվորներ:*

*20.* ***Հոպլիտներ*** *– զորատեսակ, որտեղ ծառայողները կրում էին դաշույն, սուր և վահան:*

*21. Խեյրիսոփոսը նահանջող հունական զորաբանակում գտնվող լակեդեմոնական ջոկատի հրամանատարն էր:*

*22. Հատուկ կավե անոթներ, որոնց մեջ հույները գինին խառնում էին ջրի հետ: Տվյալ դեպքում կրատերների մեջ ոչ թե գինի էր, այլ գարեջուր:*

*23. Ըստ Ստրաբոնի («Աշխարհագրություն», XI, 14, 9), Հայաստանը որպես տուրք Պարսկաստանին տարեկան տալիս էր 20.000 մտրուկ:*

*24.* ***Հելիոս*** *– հին հունական դիցարանում արևի աստված:*

*25. Քսենոփոնը Փասիս է անվանում Արաքս գետը, կամ ավելի կոնկրետ՝ Արաքսի վերին հոսանքը:*

*26. Արաքս գետի վերին հոսանքի շուրջը բնակվող ցեղեր: Փասիանների անունից ծագել է պատմական Հայաստանի Բասյան (Բասեն) գավառի անունը:*

*27. Մանգաղաձև փոքր դանակ:*

*28.Խոսքը Տրապիզոնից հարավ գտնվող լեռնային վայրերում բնակվող սկյութական ցեղերի մասին է: Սրանք հետնորդներն էին Ք. ա. VIII դարի վերջերին Հյուսիսային Կովկասից Փոքր Ասիա ներխուժած սկյութական ցեղերի:*

## ՍԱՏՐԱՊԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ (Ք. Ա. V Դ. ՎԵՐՋ) ԸՍՏ ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑՈՒ

***Դիոդորոս Սիկիլիացու «Գրադարանում» պահպանվել է նաև՝ տասը հազար հույների նշանավոր արշավանքի ու նահանջի բավական հանգամանալից նկարագրությունը: Ենթադրվում է, որ Դիոդորոսը օգտվել է Բյուրի ստրատեգոսներից մեկի՝ Սոփայնետոս Ստյումփալացու մեզ չհասած այն գործից, որտեղ, անկախ Քսենոփոնից, Սոփայնետոսը պատմում է Բյուրի ոդիսականը (տե՛ս*** **Diodori Bibliotheca Historica**, գիրք XIV, գլուխ XXVII, 4–8, XXVIII, 1–5, XXIX, 1–6, XXX, 1–2)*:*

*ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ*

*ՊԱՏՄԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ*

### *Գիրք XIV, գլուխ XXVII*

*4–8. Հելլենները յոթ օրվա ընթացքում անցան կարդուխների լեռները[1], բազում չարիքների ենթարկվելով տեղաբնակների կողմից, որոնք ռազմասեր էին և վայրերին քաջածանոթ: Սրանք (պարսից) արքային թշնամի էին ու ազատ և զբաղվում էին ռազմական արվեստով. նրանք առանձնապես վարժ էին պարսատիկներով խոշորագույն քարեր արձակելու և հույժ խոշոր նետեր օգտագործելու մեջ, որոնցով էլ նրանք հարմար դիրքերից հելլեններին հարվածներ հասցնելով, շատերին սպանեցին և ոչ քչերին էլ լուրջ վնասներ պատճառեցին: Նրանց նետերը երկու կանգունից ավելի երկար էին ու ծակում էին թե՛ վահանները, թե՛ լանջապանները, և ոչ մի զրահ չէր դիմանում դրանց հարվածին: Կարդուխները այնպիսի խոշոր նետեր էին օգտագործում, որ հելլենները նրանց արձակած նետերին կաշվե բռնակ ամրացնելով, դրանք իբրև տեգ էին օգտագործում: Արդ, մեծ*

դժվարությամբ ճեղքել-անցնելով հիշյալ երկիրը, նրանք հասան Կենտրիտես[2] գետը և այն անցնելով մտան Արմենիա[3]: Այս երկրի սատրապն էր Տիրիբազոսը[4], որի հետ դաշինք կնքեցին և երկրի միջով անցան իբրև բարեկամներ:

## Գլուխ XXVIII

*1-5. Արմենիայի լեռների միջով ուղևորվելիս, նրանք առատ ձյան պատահեցին և բոլորը կործանման վտանգի տակ գտնվեցին: Քանզի սկզբում, երբ քամի բարձրացավ, երկնքից սկսեց բարակ ձյուն տեղալ այնպես, որ ճանապարհ գնացողներին չէր խանգարում առաջ ընթանալիս. բայց հետո, երբ քամին աստիճանաբար ուժեղացավ, ձյունն այնպես էր տեղում և երկիրը ծածկում, որ ոչ ճանապարհն էր երևում, ոչ էլ հնարավոր էր տեղանքի բնույթը տեսնել: Այդ իսկ պատճառով հուսահատությունը և սարսափը համակեց զինվորներին. քանզի կործանումից վախենալով, չէին կամենում ետ վերադառնալ, իսկ ձյան առատության պատճառով չէին կարողանում առաջ գնալ: Քանզի փոթորիկը հետզհետե սաստկանում էր, ուժեղ բուք բարձրացավ և առատ ձյուն տեղաց, որը թափով խփում էր նրանց դեմքին. ուստի ամբողջ զորքը ստիպված եղավ կանգ առնել: Քանզի նրանցից յուրաքանչյուրը, անկարող լինելով դիմանալ ուղևորության այդ տանջանքներին, ստիպված էր լինում մնալ այնտեղ, ուր պատահեց: Զունենալով անհրաժեշտ պիտույք, նրանք այդ օրը և ամբողջ գիշերը անքուն մնացին. և ոմանք կրակ վառելով, սկսեցին դրանից օգտվել. ոմանք էլ. որոնց մարմիններն ամբողջապես ցրտահարված էին, կորցրել էին օգնություն ստանալու որևէ հույս, քանի որ նրանց համարյա բոլոր վերջավորությունները մահացման էին ենթարկվում: Երբ գիշերն անցավ, պարզվեց, որ բեռնատար անասունների մեծ մասն արդեն սատկել է և շատ մարդիկ մահացել են, իսկ ոչ քչերն էլ, թեև գիտակցությունը չէին կորցրել, բայց սառած լինելու պատճառով, անկարող էին շարժվել, ոմանց էլ աչքերը կուրացել էին ցրտից և ձյան արտացոլանքից: Եվ բոլորն էլ կատարելապես կոչնչանային, եթե կարճ ճանապարհ անցնելուց հետո չպատահեին պարենաշատ գյուղերի: Այս գյուղերում բեռնատար անասունների մուտքը գետնափոր էր, իսկ մարդիկ իջնում էին աստիճաններով. բնակարաններում անասունները սնվում էին խոտով, իսկ մարդիկ վայելում էին կյանքի համար անհրաժեշտ բարիքների առատություն:*

## *Գլուխ XXIX*

*1–6. Այս գյուղերում ութ օր մնալուց հետո, հելլենները ուղևորվեցին դեպի Փասիս գետը[5]: Այստեղ չորս օր մնալուց հետո, իրենց ճանապարհը շարունակեցին խաոյների[6] և փասիանների[7] երկրի միջով: Երբ տեղաբնիկները հարձակվեցին հելլենների վրա, սրանք կռվում հաղթելով, նրանցից շատերին սպանեցին և, գրավելով տեղաբնիկների տները, որոնք լեցուն էին բարիքներով, այնտեղ մնացին տասնհինգ օր: Այստեղից դուրս գալով, յոթ օրվա ընթացքում անցան խալդայներ[8] կոչված ցեղերի երկրով և հասան Հարպագոս[9] գետը, որի լայնությունը 4 պլեթրոն էր[10]: Այստեղից էլ սկյութների[11] երկրի միջով առաջանալիս նրանց ճանապարհն անցնում էր դաշտով, որտեղ նրանք երեք օր հանգստացան ամեն տեսակ բարիքների առատության մեջ: Այնուհետև ճանապարհ ընկնելով, չորրորդ օրը հասան մի խոշոր քաղաք, անունը Գյումնասիա[12]: Այստեղ այս վայրերի կառավարիչը դաշն կնքեց նրանց հետ և ուղեցույցներ տրամադրեց, որոնք պետք է հելլեններին ծով առաջնորդեին: Տասնհինգ օրում հասնելով Քենիոն[13] լեռը, առջևից ընթացողները տեսան ծովը, մեծապես հրճվեցին և այնպիսի աղաղակ բարձրացրին, որ շարասյան վերջում գտնվողները կարծելով, թե թշնամիներ են հարձակվել, զենքի դիմեցին: Բայց երբ բոլորը բարձրացան այն վայրը, որտեղից կարելի էր ծովը տեսնել, թևերը պարզելով աստվածներին, շնորհակալություն էին հայտնում, համոզված, որ արդեն փրկված են: ... Իրենց առաջնորդած ուղեցույցին նրանք պարգևեցին արծաթե բաժակ և պարսկական համազգեստ. սա, ցույց տալով նրանց դեպի մակրոնները տանող ճանապարհը, ետ վերադարձավ: Արդ, հելլենները մտնելով մակրոնների երկիրը, նրանց հետ դաշն կնքեցին և իբրև երաշխիք նրանցից ստացան բարբարոսական մի նիզակ, իսկ փոխարենը տվեցին հելլենական (նիզակ). բարբարոսները ասացին, թե իրենց նախնիների ավանդության համաձայն, այսպիսի փոխանակումը հավատարմության ամենահաստատուն երաշխիքն է: Հելլենները, անցնելով սրանց սահմաններից, հասան կոլխերի երկիրը:*

## *Գլուխ XXX*

*1–2. Այդ վայրերում նրանք գտան նաև մեծ քանակությամբ մեղվափեթակներ, որոնցից ստացվում էր թանկագին խորիսխ: Բայց*

*դրանց ճաշակողները բռնվում էին ինչ-որ տարօրինակ ախտով. քանզի այդ մեղրից ուտողները կորցնում էին իրենց բանականությունը, և ընկնելով գետին, նմանվում էին մեռյալների: Ու քանի որ դրա քաղցր համի պատճառով շատերն էին դրանից կերել, ապա այնքան մեծ բազմություն էր գետին ընկել, ասես պատերազմում ջախջախվել էին: ... Սակայն հաջորդ օրը, գրեթե նույն ժամին բոլորն ուշքի էին գալիս և, աստիճանաբար վերագտնելով իրենց դատողությունը, վեր կացան, նրանց մարմնական վիճակն այնպիսին էր, ասես թունավորումից էին փրկվել:*

*1. Այսինքն՝ Կորդվաց լեռները:*

*2. Հայկական սկզբնաղբյուրների Ջերմ գետն է, Արևելյան Տիգրիսը, այժմ՝ Բոհտան-սու:*

*3. Քսենոփոնը գրում է, որ հելլենները մտան Արևմտյան Արմենիա (Անաբասիս, գիրք IV, գլ. IV, 4):*

*4. Ըստ Քսենոփոնի, Արմենիայի սատրապն էր Օրոնտաս-Երվանդը (Անաբասիս, գիրք III, գլ. V, 17), իսկ Տիրիբազոսը սոսկ Արևմտյան Արմենիայի հյուպարքոսն էր, այսինքն՝ Օրոնտասի ստորադրյալը:*

*5. Փասիս անվան տակ պետք է հասկանալ Արաքս գետի վերին հոսանքը:*

*6. Բնագրում Χάοι – բառացիորեն՝ խա-եր: Ուսումնասիրողները, ընդհանրապես, այս անունը համարել են Քսենոփոնի մոտ հիշատակված տաոխների (հունարեն՝ τάοχοι) ցեղանվան աղավաղված ձևը: Բացառված չէ, սակայն, որ այս դեպքում մենք գործ ունենք հայերի «հայ-խայ» ինքանվան հետ:*

*7. Տե՛ս 254-րդ էջ, ծան. № 26:*

*8. Այս խալդայներին չպետք է շփոթել Հարավային Միջագետքի նույնանուն ցեղի հետ: Սրանք բնակվում էին Սև ծովի հարավարևելյան ափից ոչ հեռու:*

*9. Քսենոփոնի մոտ (Անաբասիս, գիրք IV, գլ. VII, 18)՝ Հարպասոս: Ուսումնասիրողները ենթադրում են, որ սա պետք է լինի Ճորոխի միջին հոսանքը:*

*10. Այսինքն՝ շուրջ 120 մետր, որն, անշուշտ, չափազանցություն է:*

*11. Տե՛ս 255-րդ էջ, ծան. № 28:*

*12. Քսենոփոնի մոտ (Անաբասիս, գիրք IV, գլ. VII, 19)՝ Գյումնիաս:*

*13. Քսենոփոնի մոտ (Անաբասիս, գիրք IV, գլ. VII, 21)՝ Թեքես: Այս լեռան տեղադրությունը չի որոշված:*

## ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԱԿԵԴՈՆԱՑՈՒ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

*Ք.ա. 334 թվականի գարնանը Ալեքսանդր Մակեդոնացին (336-323) սկսեց Աքեմենյան աշխարհակալության դեմ արշավանքը, որի արդյունքում վերջինս կործանվեց: Արշավանքի ընթացքում տեղի ունեցան երեք խոշոր ճակատամարտեր՝ Գրանիկոս գետի ափին (Ք.ա. 334 թ.), Կիլիկիայի Իսսոսի դաշտում (Ք.ա. 333 թ.) և վճռական ճակատամարտը՝ Ասորեստանի հյուսիսում, Արբելայից ոչ հեռու գտնվող Գավգամելա կոչվող բնակավայրի մոտ (331 թ.): Գրանիկոսի ճակատամարտում հայերի մասնակցության մասին որևէ տեղեկություն չունենք, իսկ Իսսոսում և Գավգամելայում նրանք զբաղեցնում էին աքեմենյան բանակի աջ թևը:*

*Գավգամելայի ճակատամարտում հերոսաբար մարտնչած և արժանապատվորեն հայրենիք վերադարձած հայկական զորքերը Ք. ա. 331 թ. վերականգնեցին Հայաստանի անկախությունը՝ Օրոնտես-Երվանդ III-ը Մեծ Հայքում, իսկ Միթրաուստեսը Փոքր Հայքում:*

*Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների և Հայաստանի հետ նրա առնչությունների մասին անտիկ պատմագրության մեջ պահպանված հատվածները բերվում են Արրիանոսի և Ռուփոսի երկերի՝*



*Ալեքսանդր Մակեդոնացի*



*ռուսերենից արված հայերեն թարգմանություններից (տե՛ս «Ալեք-սանդր Մակեդոնացի», Երևան, 1987)։*

*1.*

*ՀԱՅԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԻՍՍՈՍԻ ԵՎ ԳԱՎԳԱՄԵԼԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԵՐԻՆ ԸՍՏ ՔՎԻՆՏՈՒՍ ԿՈՒՐՏԻՈՍ ՌՈՒՓՈՍԻ*

*ՄԵԾՆ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԱԿԵԴՈՆԱՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

## *Գիրք III*

*II, 4. Պարսիկները հարյուր հազար էին, նրանցից երեսուն հազարը՝ հեծյալներ, մարերը՝ տասը հազար հեծյալ և հիսուն հազար հետևակային... 6. Հայերն ուղարկեցին 40.000 հետևակային՝ դրան հավելելով 7000 հեծելազոր*[1]*...*

*XII, 12. Աջ թևում կանգնած էին Մեծ Հայքի հայերը, կադուսիներն ու կապադովկիացիները, ասորիներն ու մարաստանցիները. նրանք նույնպես ունեին մանգաղակիր մարտակառքեր։ 13. Ողջ զորքի ընդհանուր թիվը հետևյալն էր՝ 45.000 հեծյալ, 200.000 հետևակային։ Այդպիսի դասավորությամբ նրանք անցան տասն ասպարեզ. կանգ առնելու հրաման ստանալով՝ նրանք զինված սպասում էին թշնամու հայտնվելուն։*

## *Գիրք IV*

*XVI, 1. Իսկ մակեդոնացիների ձախ թևում*[2]*, որն ինչպես արդեն ասվեց պահպանում էր Պարմենիոնը, մարտը թե մեկ թե մյուս կողմի համար այլ պայմաններում էր ընթանում։ 2. Մազեյոսը սրընթաց նետվելով իր հեծելազորով, նեղում էր մակեդոնացիների հեծյալ զորամասերին։ Ունենալով թվային գերակշռություն, նա արդեն շրջանցեց թշնամուն, երբ Պարմենիոնը հրամայեց իր հեծյալներին հայտնել Ալեքսանդրին, թե ինչ ծանր վիճակում են իրենք, և եթե արքան արագորեն չգա օգնության, ապա ինքը չի կարողանա կասեցնել ընդհանուր փախուստը։ 3. Երբ Պարմենիոնից այդ լուրը եկավ, արքան արդեն հեռու էր գնացել՝ սպառնալով փախչող թշնամու թիկունքին։ Նա հրամայեց կանգնեցնել սլացող ձիերին, կանգ առավ նաև ողջ ջոկատը։ Ալեքսանդրը կատաղած էր, որ իր ձեռքից խլեցին հաղթանա-*

կը և որ Դարեհին այժմ ավելի հեշտ կլինի փախչելը, քան նրան հետապնդելը: 4. Նույն ժամանակ Մազեյոսին տեղեկացրին Դարեհի պարտության մասին, չնայած ուժերի գերակշռությանը, վախենալով կռվող կողմերի ճակատագրից, նա թուլացրեց ճնշումը ճզմված հակառակորդի վրա: Պարմենիոնը չհասկացավ, թե ինչու ճակատամարտը անսպասելի թուլացավ, բայց եռանդուն կերպով օգտվեց դրանից հաղթելու համար: 5. Նա հրամայեց իր մոտ կանչել թեսալական հեծյալներին





Պտյակներ էրեբունիից (Ք. ա. V–IV դդ.)

ու ասաց. «Տեսնո՞ւմ եք հենց նոր ձեզ սաստիկ նեղող թշնամուն: Այժմ, հանկարծակի համակված վախով, նրանք երերացին մարտում: Իհարկե, մեզ հաղթանակ է խոստանում մեր արքայի հաջողությունը: Ամենուր փռված են պարսիկների դիակները: Էլ ինչո՞ւ եք դանդաղում: Միթե գլուխ չեք հանի փախչողներից»: 6. Նրա խոսքերը ճշմարիտ թվացին և հույսը բարձրացրեց զինվորների ընկճված ոգին: Ասպանդակելով ձիերին բոլորը նետվեցին թշնամու վրա, և վերջիններս սկսեցին նահանջել ոչ թե դանդաղորեն,

այլ արագ երթով:

1. Անհասկանալիորեն ռուսերեն թարգմանության մեջ դուրս է մնացել Հայոց բանակին վերաբերող տեղեկությունը, մինչդեռ զուգահեռ տրված լատիներեն բնագրում այն առկա է: Այս բացթողումն անցել է ռուսերենից հայերեն թարգմանությանը, և անհայտ մնացել գլխավորապես ռուսերենով ու հայերենով այս հեղինակին ծանոթ խորհրդային հայագետներին: Հ. Մանանդյանի մոտ Հայերի այս թվաքանակը սխալմամբ վերագրված է Գավգամելայի ճակատամարտին (տե՛ս Մ. Օհանյան, Ալեքսանդր Մակեդոնացու արևելյան արշավանքը և Հայաստանը, Երևան, 2003, էջ 35-36):

2. Մակեդոնացիների ձախ թևի դիմաց գործում էին Հայկական և կապադովկիական զորամասերը:

## ՀԱՅԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԳԱՎԳԱՄԵԼԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻՆ ԸՍՏ ՓԼԱՎԻՈՍ ԱՐՐԻԱՆՈՍԻ

## ԱԼԵՔՍԱՆԴՐԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ

### Գիրք III

III, 5. ... Հայերին ղեկավարում էին Օրոնտեսը և Միթրաուստեսը, կապադովկիացիներին՝ Արիակեսը: 6. Կելեսիրիայի և Միջագետքի ասորիներին առաջնորդում էր Մազեյոսը: Ասում են, Դարեհի բանակում եղել է մինչև 40.000 հեծյալ, մինչև 1.000.000 հետևակային, 200 մանգաղակիր մարտակառք և ոչ մեծ թվով փղեր՝ 15 գլուխ, որոնց իրենց հետ բերել էին հնդիկները Ինդոս գետի այս ափից[1]:

11. 7. Աջ թևի առջևում շարված էին Հայկական և կապադովկիական հեծելազորները և հիսուն մանգաղակիր մարտակառք:

1. Արիանոսի բերած թվերը խիստ չափազանցված են: Ավելի հավանական են Ռուփոսի բերած թվերը՝ 200.000 հետևակ եւ 45.000 հեծելազոր, ընդ որում, նրա մոտ փղեր չեն հիշվում:

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԱԿԵԴՈՆԱՑՈՒ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ՕՐՈՔ ԸՍՏ ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑՈՒ

### ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ

### ՊԱՏՄԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ

### Գիրք XVII, գլ. LXIV

*6. Ալեքսանդրը[1] Միթրենեսին[2], որն իրեն հանձնել էր Սարդեսի[3] միջնաբերդը, տվեց Արմենիան[4]:*

### Գիրք XIX, գլ. XXIII

*1–3. Քանի որ բոլորին ըստ արժանվույն ծառայություն էր մատուցվում, բազմությանը հաճելի թվաց Պևկեստեսի[5] հոգատարությունը և բացահայտ երևաց, որ նա մեծ հաջողություն ունեցավ գործի համակրանքը չահելու ուղղությամբ: Բայց Եվմենեսը[6], այս տեսնելով և մտածելով, որ Պևկեստեսը այդպես է վարվում բազմության հետ, ձգտելով ընդհանուր հրամանատարության, կեղծ նամակներ հորինեց, որոնցով զինվորներին համարձակություն ներշնչեց պատերազմների ելքի նկատմամբ և, նվաստացնելով Պևկեստեսի հեղինակությունն ու փայլը, բարձրացրեց իր անձնավորությունը և բազմության աչքին մեծացրեց իր բարեհաջող հույսերի ակնկալությունները: Գրվածքների իմաստն այն էր, որ Օլիմպիադան[7] միանալով Ալեքսանդրի որդու[8] հետ, Կասսանդրոսի[9] սպանությունից հետո, դարձել էր Մակեդոնիայի թագավորության տերը և որ Պոլյուպերքոնը[10] իր հետ ունենալով թագավորական զորքերի լավագույն մասը և փղերին, անցել էր Ասիա՝ Անտիգոնոսի[11] դեմ կռվելու և արդեն մոտենում էր Կապադովկիային: Նամակը, որ գրված էր ասորերեն գրերով[12], ուղարկված էր Օրոնտեսի[13] կողմից, որը տիրում էր Արմենիայի սատրապությանը և Պևկեստեսի բարեկամն էր: Քանի որ նամակին հավատք ընծայվեց, այդ սատրապների միջև նախկինում գոյություն ունեցած մտերմության պատճառով, Եվմենեսը կարգադրեց, որ այդ նամակը փոխանցելով ցույց տան հրամանատարներին և մյուս զինվորներից չատերին. դրանից հետո համայն զորաբանակի մտադրությունը փոխվեց և բոլորն իրենց ակնկալությունները կապեցին Եվմենեսի հույսերի հետ: Հավատալով, որ նա թագավորների միջոցով կկարողանա բարձրացնել ում ցանկանա և պատժել բոլոր իրեն վնասողներին:*

4–5. Այդ տարիներին Ալեքսանդր Մակեդոնացին պարտության մատնեց պարսիկներին, որից հետո վախճանվեց: Ապա Պերդիկկասը[14], որն այդ ժամանակ ամբողջ տերության առաջնորդն էր, Եվմենեսին ուղարկեց որպես Կապադովկիայի զորապետ: Արիարաթեսը[15] պարտվելով ճակատամարտում՝ ընկավ, որից հետո թե՛ Կապադովկիան և թե՛ նրան սահմանակից երկրներն ընկան մակեդոնացիների տիրապետության տակ: Իսկ Արիարաթեսը՝[16] նախորդ թագավորի որդին, հուսահատվելով այդ ժամանակ ստեղծված դրությունից, քչերի հետ ապաստանում է Հայաստանում: Ոչ շատ ժամանակ անց, երբ արդեն Եվմենեսն ու Պերդիկկասը և նրանց համախոհները մահացել էին[17], իսկ Անտիգոնոսն ու Սելևկոսը[18] զբաղված էին այլ գործերով, Արիարաթեսը հայերի թագավոր Արդոատեսից[19] զորք ստանալով, սպանեց մակեդոնացիների զորապետ Ամյունտասին, մակեդոնացիներին անհապաղ դուրս վտարեց երկրից և վերանվաճեց իր հայրենի իշխանությունը:

1. Խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու մասին է:

2. Սա Լիդիայի նախկին պարսկական կառավարիչն էր:

3. Սարդեսը լիդիական սատրապության մայրաքաղաքն էր, որը Ք. ա. 334 թ. Միթրենեսը դավաճանաբար հանձնեց Ալեքսանդրին: Ներկայիս Սարտ գյուղն է Թուրքիայում:

4. Արմենիան Միթրենեսին հանձնելը կրում էր ձևական բնույթ, քանի որ այն երբեք էլ չնվաճվեց Ալեքսանդրի կողմից, ուստի և Միթրենեսն էլ երբեք չտիրեց Արմենիայում:

5. Պևկեստեսը Ալեքսանդրի արքայական գնդի նախկին անդամներից էր, որին նա կարգել էր Պերսիս (Պարսք) երկրի սատրապ: Այդ պաշտոնում նա մնաց նաև Մակեդոնացու մահից հետո:

6. Սա Ալեքսանդր Մակեդոնացու անձնական քարտուղար Եվմենես Կարդիացին էր, որը Բաբելոնի 323 թ. խորհրդակցությունում՝ Ալեքսանդրի կայսրության առաջին բաժանման արարողության ժամանակ, ստացավ Կապադովկիան և Պափլագոնիան:

7. Օլիմպիադան Ալեքսանդր Մակեդոնացու մայրն էր:

8. Խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու մահից անմիջապես հետո ծնված նրա և բակտրիացի մեծատոհմիկ Օքսիարտեսի դուստր Ռոքսանայի որդու մասին է, որին Մակեդոնացու զինակիցները տվեցին Ալեքսանդր անունը և հռչակեցին թագավոր՝ Ալեքսանդր IV անունով (323-311):

*9. Սա Ալեքսանդր Մակեդոնացու զինակից, Մակեդոնիայի կառավարիչ Անտիպատրոսի որդին էր, որը հոր մահից հետո (319 թ.) զավթեց Մակեդոնիան և 316 թ. սպանել տվեց Օլիմպիադային, իսկ 311 թ. գլխատել տվեց Ռոքսանային ու Ալեքսանդր IV-ին: Այսպիսով, Դիոդորոսը շփոթում է, այստեղ խոսք պիտի լիներ ոչ թե Կասսանդրոսի սպանության մասին, այլ Ալեքսանդր Մակեդոնացու խորթ եղբայր՝ Փիլիպպոս Արիդեյոսի, որը Օլիմպիադայի կարգադրությամբ մահապատժի էր ենթարկվել 317 թվականին:*

*10. Պոլյուպերքոնը Փիլիպպոս II-ի և Ալեքսանդր Մակեդոնացու հավատարիմ զորավարներից էր: Նա պայքարում էր Ալեքսանդրի տերության միասնության պահպանման համար: Անտիպատրոսի կտակի համաձայն, նրա մահից հետո՝ դարձավ Մակեդոնիայի կառավարիչը և Ալեքսանդր IV-ի խնամակալը:*

*11. Խոսքը Ալեքսանդրի զորավար Անտիգոնոս Միականու (384-301) մասին է, դիադոխներից («ժառանգորդներից») մեկը, որը 323 թ. Բաբելոնի խորհրդակցությունում ստացավ Մեծ Փռյուգիան, Պամփյուլիան և Լիկիան:*

*12. Ըստ երևույթին, խոսքը արամեական գրերի մասին է:*

*13. **Օրոնտես** (Երվանդ) - Հայաստանի սատրապն էր, որը 331 թ. Գավգամելայի ճակատամարտի ժամանակ գլխավորում էր հայկական այրուձին: Աքեմենյան տերության կործանումից հետո նա հանդես եկավ որպես Հայաստանի անկախ կառավարիչ ու թագավոր: Սա Երվանդ III-ն է (331-300) :*

*14. Պերդիկկասը Ալեքսանդրի մերձավորագույն զինակիցներից մեկն էր, որը նրա մահից հետո դարձավ տերության խնամակալը:*

*15. Խոսքը Կապադովկիայի թագավոր Արիարաթես I-ի մասին է:*

*16. Սա Արիարաթես II -ն էր:*

*17. Պերդիկկասը մահացել է 321 թ., իսկ Եվմենեսը՝ 316:*

*18. Խոսքը Ալեքսանդրի մերձավորագույն զինակից, Սելևկյան պետության հիմնադիր Սելևկոս I Նիկատորի (312-281) մասին է:*

*19. Հայոց թագավորի անվան այս Արդոատես ձևը վեճերի առիթ է տվել: Հայտնի չէ նաև, թե սա որտեղ է թագավորել՝ Մեծ Հայքում, թե՞ Փոքր Հայքում: Որոշ ուսումնասիրողներ (Ի. Դրոյզեն, Յո. Մարկվարտ, Հ. Մանանդյան և ուրիշներ) կարծում են, որ Արդոատեսը Օրոնտեսի աղճատված ձևն է և ըստ այդմ էլ գտնում են, թե սա եղել է Հայաստանի սատրապ Օրոնտես-Երվանդը, որը 331-330 թթ. իրեն հայտարարեց Հայաստանի թագավոր:*

## ԱՂՋԱԿԱԼԵԻ ԵՐԿԼԵԶՎՅԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԵՆԻԱՅԻ ՍԱՏՐԱՊԻ ՄԱՍԻՆ

***Արձանագրությունը հայտնաբերվել է 1900 թվականին, Փոքր Հայքի Տևրիկ ամրոցից 41 կմ հարավ-արևմուտք գտնվող Աղջակալե (բառացի՝ «Անտառի ամրոց») հնավայրից: Արձանագրությունը երկլեզու է՝ արամեերեն և հունարեն: Բնագրի հունարեն և արամեերեն հատվածները բառացիորեն չեն կրկնում միմյանց:***

***Արձանագրությունը ուսումնասիրել և անգլերեն է թարգմանել Ե. Լիպինսկին: Հայերեն թարգմանությունը՝ Ա. Ե. Մովսիսյանի:***

### ա. Արամեերեն հատված

*1. Այս պարիսպների միջև հիմնվեց դամբարանը*
*2. Որոմանայի՝[1] որդու Արիաու-*
*3. կայի[2]: Որպես [մնայուն հիշատակ] կառուցեց այն*
*4. Արի[աուկան]՝ որդին Որոմանայի՝*
*5. Սատ[րապը Ար] մենիայի[4]:*

### բ. Հունարեն հատված

*Օրինավոր սատրապների մեջ անմահ հիշատակ կլինի Որոմանեսին՝ [որդուն] Արիակեսի, և Արիակեսին՝ [նրա] սիրելի որդուն, Արանդայի [Անդոմոնի] համար, որ [նա] կառուցեց գեղեցիկ բնակավայրի չքեղ պարիսպներն ամայի տեղում:*

*1. Որոմանան (Որոմանես) Ք. ա. IV դարի 30-ական թվականներին եղել է Փոքր Հայքի Աքեմենյան սատրապը:*

*2. Արիաուկան (Արիակես) Որոմանեսի հայրն է, որը Գավգամելայի ճակատամարտի ժամանակ գլխավորել է կապադովկիացիների զորքն՝ ընդդեմ Ալեքսանդր Մակեդոնացու:*

*3. Անկասկած է, որ խոսքը գնում է Փոքր Հայքի մասին:*





## ԲԱԺԻՆ ՉՈՐՐՈՐԴ

# ԱՐՏԱՇԵՍՅԱՆՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

## ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻՆ ԱՐՏԱՇԵՍ I-Ի ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### *ԴԻՈԴՈՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ*

### *ՊԱՏՄԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ*

### *Գիրք XXXI*

*17a. Հայաստանի թագավոր Արտաքսիասը[1] ապստամբելով Անտիոքոսից[2], իր անունով քաղաք հիմնեց[3] և ժողովեց հզոր արանց: Իսկ Անտիոքոսը[4], որն այդ տարիներին հզոր էր, ինչպես ոչ ոք մյուս թագավորներից, արշավեց նրա վրա և, հաղթելով, ստիպեց նրան հնազանդվել:*

*22. Այն բանից հետո, երբ Արիարաթեսը[5] Միթրոբուզանեսին[6] վերականգնեց հայրենի տիրության վրա, Արտաքսիասը՝ Հայաստանի թագավորը, չհրաժարվելով իշխանության նկատմամբ իր ունեցած ընչաքաղցությունից, դեսպաններ ուղարկեց Արիարաթեսի մոտ, առաջարկելով նրան համաձայնել իր հետ և, յուրաքանչյուրն իր մոտ եղած երիտասարդին[7] մահվան ենթարկելով, իրար միջև բաժանել Սոփենեն[8]: Իսկ Արիարաթեսը, որին խիստ օտար էր այդպիսի անազնվությունը, հանդիմանեց դեսպաններին և (նամակ) գրեց Արտաքսիասին, առաջարկելով նրան հեռու մնալ նման գործերից: Հետևաբար, Արիարաթեսն ահա այս գործից հետո, իր անձի շուրջն եղած համբավը մեծ չափով բարձրացրեց: Իսկ Միթրոբուզանեսը, իրեն իշխանության վրա վերականգնողի հանդեպ հիացության արժանի հավատարմության և ազնվության շնորհիվ՝ տիրացավ իր հայրենի իշխանության:*

*27a. Երբ հայտնի դարձավ, թե հռոմեացիները թշնաբար են տրամադրված Դեմետրիոսի[9] հանդեպ, ապա նրան արհամարհեցին ոչ միայն մյուս թագավորները, այլև նույնիսկ նրան ենթակա սատրապներից ոմանք, որոնցից ամենահայտնին Տիմարքոսն էր[10]: Սա ծագումով միլետացի էր և նախկինում թագավորած Անտիոքոսի[11] ընկերը, որը բազմիցս Հռոմ էր ուղարկվել իբրև դեսպան: ... Սա չատ մեղադրանքներ հարուցելով Դեմետրիոսի դեմ, համոզեց սենատին նրա դեմ ընդունել այսպիսի որոշում. «Քանի որ Տիմարքոսը[12]..., ապա նա թող լինի նրանց թագավորը»: Տիմարքոսը, ոգևորված այս որոշումից, Մեդիայում կազմակերպեց նշանակալից բանակ. միաժամանակ Դեմետրիոսի դեմ դաշինք հաստատեց Հայաստանի թագավոր Արտաքսիասի հետ: Այնուհետև, ահաբեկելով սահմանակից ժողովուրդներին իր զորքերի հզորությամբ և նրանցից չատերին հնազանդեցնելով իրեն, արշավեց Զևգմայի[13] վրա և, վերջապես, դարձավ թագավորության մեջ հզոր:*

*1. Խոսքը Մեծ Հայքի թագավոր Արտաշես I Բարիի (189-160) մասին է:*

*2. Սա Սելևկյան թագավոր Անտիոքոս III Մեծն է (223-187):*

*3. Այսինքն՝ Արտաշատ մայրաքաղաքը, որ կառուցվել է Ք. ա. II դարի 70-ական թվականներին:*

*4. Այստեղ Դիոդորոսը նկատի ունի Սելևկյան Անտիոքոս IV Էպիփանես թագավորին (175-164):*

*5. Սա Կապադովկիայի Արիարաթես V թագավորն է (163-130):*

*6. Միթրոբուզանես (Մեհրուժան) - Զարեհ թագավորի որդին էր, որը 163 թ. Արիարաթես V-ի կողմից հռչակվեց Ծոփքի թագավոր:*

*7. Ակնարկությունը Ծոփքի մահացած թագավոր Զարեհի երկու որդիների մասին է, որոնցից ավագը՝ Մեհրուժանը ապաստանել էր Կապադովկիայում՝ Արիարաթես V-ի մոտ, իսկ կրտսերը, որի անունը մեզ հայտնի չէ՝ Հայոց Արտաշես I թագավորի մոտ:*

*8. Ծոփաց աշխարհի հունական անվանման ձևն է:*

*9. Սա Սելևկյան Դեմետրիոս I Սոտեր թագավորն է (162-150):*

*10. Խոսքը Բաբելոնիայի և Մեդիայի սելևկյան սատրապ Տիմարքոսի մասին է, որը Անտիոքոս V Եվպատորի մահից հետո, ապստամբություն բարձրացրեց Դեմետրիոս I-ի դեմ և իրեն անկախ թագավոր հռչակեց Մեդիայում (162-160):*

*11. Այստեղ ակնարկվում է Սելևկյան թագավոր Անտիոքոս IV Էպիփանեսը:*

*12. Այստեղ Դիոդորոսի ձեռագիրը թերի է:*

*13. Զևգմա գետանցը գտնվում էր Վերին Եփրատի աջ ափին, Սամոսատ քաղաքի մոտ:*

## *ԱՐՏԱՇԵՍ I-Ի ՊԱՅՔԱՐԸ ԵՐՎԱՆԴ ՎԵՐՋԻՆԻ ԴԵՄ ԵՎ ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ*

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԽԳ*

#### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՍՄԲԱՏԸ ՊԱՐՍԻՑ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՆ ՕԳՆԱԿԱՆ ԴԱՐՁՆԵԼՈՎ ԽՆԴՐՈՒՄ Է ԱՐՏԱՇԵՍԻՆ ԹԱԳԱՎՈՐԵՑՆԵԼ

*Իսկ երբ մանուկ Արտաշեսը[1] մեծացավ և նրա դայակ Սմբատը[2] քաջության և արիության շատ գործեր ցույց տվեց, արյաց նախարարները նրան համակրելով բարեխոսում են թագավորին[3], որ նրան պարգև տա, ինչ որ նա խնդրի: Թագավորը համաձայնվելով ասում է նախարարներին. «Իմացե՛ք, ի՛նչ է ցանկանում այդ քաջ մարդը»: Նրանք ասում են. «Անմա՛հ բարերար տեր, Սմբատն ուրիշ բան չի ցանկանում, այլ միայն, որ քո արյունակից և հարազատ Արտաշեսին՝ Սանատրուկի որդուն, որ զրկված է իր թագավորությունից, հաստատես իր թագավորության մեջ»: Արքայից արքան համաձայնվելով՝ Սմբատի ձեռքն է տալիս մի մասը Ասորեստանի զորքերից և Ատրպատականի զորքերը, որպեսզի Արտաշեսին տանեն և հայրենական գահի վրա հաստատեն:*

### *ԽԴ*

#### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԵՐՎԱՆԴԸ ԼՍՈՒՄ Է ԱՐՏԱՇԵՍԻ ԳԱԼԸ ԵՎ ԶՈՐՔ Է ԳՈՒՄԱՐՈՒՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՊԱՏՐԱՍՏՎԵԼՈՒ

*Երվանդին[4] Ուտիք գավառում լուր է հասնում, թե պարսից թագավորը մեծ զորք գումարեց Սմբատի ձեռքի տակ, որպեսզի քեզ վրա գա և մանուկ Արտաշեսին իր թագավորությունը բերի: Երվանդն այս լսելով՝ այդ տեղում կողմնապահներ է թողնում նախարարներից շատերին և ինքն շտապով գալիս է իր քաղաքը[5], որպեսզի իր մոտ հավաքի հայոց, վրաց և Կեսարիայի կողմերի զորքերը, նաև Միջագետքինը, խնդրելով և վարձ վճարելով: Գարնանային օրեր էին, ուստի բոլոր զորքերը շուտով գումարվեցին նրա մոտ. բազմաթիվ հետևակ զորքերով եկավ նաև Արգամը՝ Մուրացյան ցեղի տանուտերը, որ Աժ-*

*դահակի[6] սերնդից էր: Որովհետև Երվանդը նրան վերադարձրել էր երկրորդական գահը[7], որը Տիգրանը խլել էր նրանից և տվել էր իր քրոջ ամուսին Միհրդատին, իսկ Միհրդատի մահից հետո ոչ ոքի չէր տրված, մինչև որ Երվանդը վերադարձրեց Արգամին: Եվ ոչ միայն նրան, այլև բոլոր նախարարներին պարգևներ և պատիվներ էր տալիս, և բոլոր զորքերին առատապես պարգևատրում էր:*

## *ԽԵ*

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՐՏԱՇԵՍԸ ԻՐ ԵՐԿԻՐԸ ՄՏՆԵԼՈՒՆ ՊԵՍ ԳՈՐԾԸ ՀԱՋՈՂՎԵՑ

*Իսկ Սմբատը մանուկ Արտաշեսի հետ շտապում էր հասնել Ուտիքի սահմանները: Այնտեղ նրան ընդառաջ եկան այն կողմի զորքերը, նաև այն նախարարները, որոնց Երվանդը թողել էր այնտեղ: Այս լսելով՝ Հայոց մյուս նախարարներն էլ լքվում, քայքայվում և մտածում են Երվանդից բաժանվել, մանավանդ երբ տեսան, որ հռոմեացիների զորքերը նրան օգնության չեկան: Իսկ Երվանդն ավելի առատացնում է պարգևները և նրանցից ամեն մեկին բաժանում է գանձեր, և որքան շատ էր տալիս, այնքան ավելի ատելի էր դառնում, որովհետև բոլորն էլ գիտեին, թե առատաձեռնությունից չէ որ տալիս է, այլ երկյուղից է վատնում: Եվ այնքան սիրելի չէր դարձնում նրանց, որոնց շատ էր տալիս, որքան թշնամի էր դարձնում նրանց, որոնց այնքան առատ չէր տալիս:*

## *ԽԶ*

### ԵՐՎԱՆԴԻ ՊԱՏԵՐԱԶՄՆ ԱՐՏԱՇԵՍԻ ԴԵՄ ԵՎ ՓԱԽՈՒՍՏԸ, ՆՐԱ ՔԱՂԱՔԻ ԳՐԱՎՈՒՄՆ ՈՒ ՄԱՀԸ

*Բայց Սմբատը մանուկ Արտաշեսի հետ բարձրանում է Գեղամա ծովի ափը՝ Արագած կոչված լեռան թիկունքով. նրանք շտապում էին հասնել Երվանդի բանակին: Նրա զորքերի բազմությանը նշանակություն չէին տալիս, միայն Մուրացյան Արգամից էին ակնածում, որովհետև քաջ մարդ էր և իր իշխանության տակ ուներ բազմաթիվ նիզակավորներ: Եվ Երվանդի բանակն ավելի քան երեք հարյուր ասպարեզ դեպի հյուսիս հեռու էր իր քաղաքից և գտնվում էր Ախուրյան գետի վրա: Երվանդը երբ լսեց (Սմբատի մոտենալը), նրա դեմ հանեց իր զորքերի բազմությունը և ճակատ կազմեց իր բանակից ոչ*

հեռու: Իսկ Արտաշեսը Մուրացյան նահապետին պատգամ ուղարկեց հաստատուն երդումներով, որ նրան կթողնի, ինչ որ նա ստացել է Երվանդից, և էլի ուրիշ բաներ կավելացնի, միայն թե նա Երվանդին լքի, մի կողմ քաշվի:

Երբ Արտաշեսի դրոշակները Երվանդի զորքի ճակատի առաջ երևացին, Արգամը հետևակների բազմությունն առավ ու մի կողմ քաշվեց: Իսկ Սմբատը հրամայեց պղնձե փողերը հնչեցնել և իր զորքի ճակատն շարժելով սլացավ, ինչպես արծիվը կաքավների երամի վրա: Իսկ հայոց նախարարները, որոնք (Երվանդի ճակատի) աջ և ձախ թևերն էին կազմում, խառնվում միանում են նրա հետ: Վրաց զորքերը թեպետ իրենց Փարսամ թագավորի հետ հանդուգն հարձակում գործելով ընդհարվեցին, բայց շուտով ետ փախան: Այստեղ պետք էր տեսնել Երվանդի գնդի և Միջագետքի զորքերի սարսափելի կոտորածը: Երկու ճակատները իրար խառնվելիս Արտաշեսի դեմ են գալիս Տավրոսցի քաջ մարդիկ, որոնք մահն աչքերն առած՝ Երվանդին խոստացել էին, թե Արտաշեսին կսպանեն: Սրանց հետիոտն պատահում է Գիսակը՝ Արտաշեսի դայակի որդին, և մեջ մտնելով նրանց սպանում է և հաղթություն է տանում, որի ժամանակ նրա երեսի կեսն էլ սրով կտրում են, և նա մեռնում է այսպես: Մնացած զորքերը փախուստի են դիմում:

Իսկ Երվանդը իր ձիով շատ ասպարեզներ անցնելով և իր բանակից մինչև քաղաքը շինված իջևանները նորանոր ձիեր փոխելով, փախչում էր իջևանից-իջևան: Սմբատն էլ նրան հետամուտ լինելով՝ սաստկապես հալածում է գիշերով մինչև քաղաքադուռը: Իսկ մարաց զորքերը Երվանդի գնդի կողմն անցնելով՝ մթության մեջ բանակ են դնում դիակների վրա: Արտաշեսն էլ հասնելով Երվանդի վրանը, որը նա շրջափակում էր կտավով ու կաշվով, իջավ և այն գիշերը նրա վրանում մնաց: Իսկ երբ լուսացավ, նա տիրաբար կարգադրելով հրամայեց սպանվածներին թաղել: Այն հովիտը, որտեղ (մարաց) զորքերը դիակների վրա բանակ դրին, կոչեց Մարաց մարգ, իսկ ճակատամարտի տեղը՝ Երվանդավան, իբր թե այստեղ վանեց Երվանդին. այսպես էլ կոչվում է մինչև այսօր: Ապա գնաց Երվանդի քաղաքը, կեսօրից առաջ Երվանդի դաստակերտը հասնելով՝ զորքին հրամայեց, որ միասին բարձր աղաղակեն «Մար ամատ», որ թարգմանվում է՝ մարը եկավ, սրանով հիշեցնելով այն վիրավորանքը, որ նրա մասին ուղարկում էր Երվանդը պարսից թագավորին և Սմբատին, նրան մար կոչելով[8]: Հենց այս ձայնով էլ այն դաստակերտը Մարմետ կոչվեց, հավանորեն Արտաշեսի կամքով, որպեսզի Երվանդի անունը

նրա վրայից վերանա: Այս է պատճառը այդ դաստակերտի անվանակոչության:

Բայց Սմբատը գիշերով Երվանդի հետևից ընկնելով փոքրաթիվ վաշտով՝ քաղաքի դուռը պահպանում է, մինչև որ Արտաշեսը և բոլոր զորքերը գալիս են: Եվ երբ քաջերն սկսեցին ամրոցի դեմ կռվել, ամրոցի մարդիկ անձնատուր եղան և քաղաքի դուռը բացին: Զինվորներից մեկը մտնելով՝ դաշույնով Երվանդի գլխին խփեց և ուղեղը տան հատակի վրա ցրեց. այսպես ջախջախվելով վախճանվեց քսան տարի թագավորելուց հետո: Բայց Արտաշեսը հիշելով, թե Երվանդը Արշակունյաց ցեղի խառնուրդ էր, հրամայում է թաղել և մահարձան դնել:

## ԽԷ

### ԱՐՏԱՇԵՍԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ ԵՎ ԻՐ ԵՐԱԽՏԱՎՈՐՆԵՐԻՆ ԲԱՐԻՔՆԵՐ ԱՆԵԼԸ

Երվանդի մահից հետո Սմբատը մտնելով խուզարկում է արքունական գանձերը: Սանատրուկ թագավորի թագը գտնելով՝ դնում է Արտաշեսի գլուխը և թագավորեցնում է ամբողջ Հայաստանի վրա պարսից Դարեհ թագավորի քսանիններորդ տարում[9]: Արտաշեսը թագավորությունն ստանալով՝ պարգևներ է տկալիս մարաց և պարսից զորքերին և ուղարկում իրենց երկիրը: Նույնպես տալիս է քաջ և պատվավոր Արգամին նրան խոստացած երկրորդական գահը, նաև հակինթներով զարդարված պսակ, երկու ականջներին գինդեր, մի ոտքին կարմիր ագանելիք, իրավունք ունենալ գործածելու ոսկե գդալ և պատառաքաղ և ոսկեղեն գավաթներով խմելու: Եվ այս պատիվներից ոչ պակաս տալիս է իր դայակ Սմբատին, բացի երկու գնդերից և կարմիր կոշիկից: Եվ բացի նրա հայրենական թագակապ ասպետությունից և արևմտյան զորքի իշխանությունից՝ նրան է վստահում Հայոց բոլոր զորքերը, մեր երկրի բոլոր գործակալները և ամբողջ արքունական տունը: Իսկ Ներսեհին, իր դայակի Գիսակ որդու որդուն (նախարարական) ցեղ դարձնելով՝ կոչում է Դիմաքսյան՝ նրա հոր քաջագործությունների անունով, որովհետև, ինչպես ասացինք, նրա դեմքի կեսը սրով կտրեցին՝ Արտաշեսի համար:

Պատմվում է, թե (Արտաշեսը) նույն օրում (նախարարական) ցեղի է վերածել տասնհինգ պատանի. Տուրի որդիներին՝ ցեղը կոչելով նրանց հոր անունով Տրունի, ոչ թե որևէ քաջագործության համար, այլ նրանց հոր լրտեսության համար, որ կատարում էր (Երվանդ) թագավորի տնից Սմբատին (տեղեկություններ ուղարկելով), որովհետև Երվանդին մտերիմ էր, որ և նրանից սպանվեց նույն պատճա-

*ռով։*

## ԽԸ

### ԵՐՎԱԶԻՆ ՍՊԱՆԵԼԸ ԵՎ ՄՅՈՒՍ ԲԱԳԱՐԱՆԸ ՇԻՆԵԼԸ, ԵՎ ԱՐՏԱՇԵՍԻ ՀԱՐԿԱՏՈՒ ԴԱՌՆԱԼԸ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻՆ

*Սրանից հետո (Արտաշեսը) հրամայում է Սմբատին գնալ Բագարան ամրոցը, որ Ախուրյան գետի վրա էր, Երվանդի քաղաքի մոտ, և սպանել Երվանդի եղբորը՝ Երվազին[10]։ Սմբատը նրան բռնելով՝ հրամայում է նրա շլնքից մի երկանաքար կապել և նետել գետի մի պտույտի մեջ։ Նրա տեղ բագինների վրա նշանակում է մի երազահան մոգի աշակերտի, որ մտերիմ էր Արտաշեսին, որին այդ պատճառով Մոգպաշտ էին ասում։ Հետո ավար է առնում Երվազի գանձերը և հինգ հարյուր հոգի ծառաներ, նաև մեհյանների գանձերից ընտիրները և բերում է Արտաշեսին։ Արտաշեսը Սմբատին է պարգևում Երվանդի ծառաներին, իսկ գանձերը հրամայում է տանել պարսից Դարեհ թագավորին, իր գանձերից էլ վրան ավելացնելով, շնորհակալության և պատվի համար, իբրև իր հոր և օգնականի[11]։*

## ԽԹ

### ԱՐՏԱՇԱՏ ՔԱՂԱՔԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Արտաշես Վերջինի գործերից շատ բան հայտնի են քեզ այն վիպասաններից, որոնք պատմում են Գողթնում[12], ինչպես քաղաքը շինելը, խնամիությունն Ալանների հետ, նրա սերունդների ծնունդը և Սաթենիկի իբրև թե սիրահարությունը առասպելական վիշապազուններին, այսինքն՝ Աժդահակի սերունդներին, որ գրաված ունեն Մասիսի ամբողջ ստորոտը. կռիվը նրանց հետ, նրանց իշխանության քայքայումը, նրանց սպանությունը և շինվածքների հրկիզումը, և Արտաշեսի որդիների նախանձը և իրար դեմ գրգռվելը կանանց միջոցով։ Այս բոլորը, ինչպես ասացինք, քեզ հայտնի են վիպասանների երգերից, բայց մենք ևս կարճառոտ կհիշատակենք և այլաբանությունը կճշմարտենք[13]։*

*Արտաշեսը գնում է այն տեղը, որտեղ Արաքսը և Մեծամորը խառնվում են, և այնտեղ բլուրը հավանելով, քաղաք է շինում և իր անունով կոչում է Արտաշատ։ Արաքսն էլ օգնում է նրան անտառի փայտով։ Ուստի առանց դժվարության և արագ շինելով՝ այնտեղ*

*մեհյան է կանգնեցնում և Բագարանից այնտեղ է փոխադրում Արտեմիսի[14] արձանը և բոլոր հայրենական կուռքերը: Բայց Ապոլոնի[15] արձանը կանգնեցնում է քաղաքից դուրս ճանապարհին մոտ: Երվանդը քաղաքից դուրս է բերում հրեա գերիներին, որ այնտեղ տարված էին Արմավիրից, և բերում նստեցնում է Արտաշատում: Նաև Երվանդի քաղաքի ամբողջ վայելչությունները, ինչ որ նա փոխադրել էր Արմավիրից, և ինչ որ հենց ինքն էր շինել, բերում է Արտաշատ, և ավելի շատ բան էլ իր կողմից շինելով՝ սարքավորում է իբրև արքայանիստ քաղաք:*

*1. Խորենացին Արտաշեսին դիտում է որպես Արշակունյաց (Երվանդունիների) արքայատան օրինական ժառանգորդ՝ Հայոց Սանատրուկ Թագավորի կենդանի մնացած միակ որդին, որին Սմբատ Բյուրատյանը փրկելով տարել էր Պարսկաստան:*

*2. **Սմբատ** – Բյուրատ Բագրատունու որդին էր, Արտաշեսի դայակը, փրկել է նրան Երվանդ Վերջինի հետապնդումներից, իսկ հետագայում մեծապես օգնել՝ վերագրավելու հայրենական գահը և Հայաստանի հետ վերամիավորելու նրանից անջատված երկրամասերը: Արտաշեսը նրան նշանակել է հայկական զորքերի հարավային զորավարության հրամանատար: Պետք է նշել, որ Խորենացին որոշ գունազարդումներով է ներկայացրել Սմբատ Բագրատունուն: Չափազանցված է հատկապես Սմբատի դերը Արտաշեսի ողջ գործունեության ընթացքում, այնպես որ վերջինս գրեթե անելիք չունի:*

*3. Այսինքն՝ պարսից Թագավորին, որը, Խորենացու ցուցման համաձայն, Դարեհ Վերջինն էր: Ըստ Խորենացու ժամանակագրության, այս իրադարձությունները տեղի են ունեցել Ք. հ. I դարի երկրորդ կեսում՝ հռոմեական կայսըեր Վեսպասիանոսի և Տիտոսի ժամանակներում, սակայն, ինչպես հայտնի է, Դարեհ III Կոդոմանոսը (Դարեհ Վերջին) Թագավորել է Ք. ա. 336-330 Թվականներին, հետևաբար, Խորենացու Դարեհ Վերջինին չի կարելի նույնացնել Դարեհ Կոդոմանոսի հետ: Մյուս կողմից էլ, Արտաշես I-ը, որը, Ք. ա. III դ. վերջերի – Ք. ա. II դ. առաջին կեսի անձնավորություն է, չէր կարող լինել ինչպես Դարեհ Կոդոմանոսի, այնպես էլ Վեսպասիանոսի ու Տիտոսի ժամանակակիցը: Այստեղ առկա է ժամանակագրական շփոթմունք, որը գալիս է Պատմահոր օգտագործած աղբյուրից:*

*4. **Երվանդ Արշակունի** – Հայոց Թագավոր Երվանդ IV Վերջինն է (220-201), Ստրաբոնի հիշատակած վերջին Օրոնտեսը (տե՛ս 314-րդ էջ, ծան. № 3): Ըստ Խորենացու, Արշակունի՝ միայն մոր կողմից, բռնատիրող: Իրականում Երվանդը օրինական Թագավորական հարստության՝ Երվանդունիների տան ներկայացուցիչն էր, իսկ Արտաշեսը, ըստ երևույթին, միայն կողմնակի առնչություն ուներ*

*այս տոհմին: Ք. ա. 201 թ., օգտվելով Երվանդ Վերջինի դեմ ծավալված դժգոհություններից՝ Արտաշեսը տապալում է նրան և հետագայում հիմք դնում Արտաշեսյան արքայատան: Սակայն, իր գործողություններն արդարացնելու միտումով, Արտաշեսը չարունակում է իր տունը հորջորջել «Երվանդական»:*

*5. Խոսքը Երվանդունիների թագավորության վերջին մայրաքաղաք Երվանդաշատի մասին է: Հիմնադրվել է Ք. ա. III դարում, Երասխ և Ախուրյան գետերի միախառնման տեղում, Երասխի ձախ ափին:*

*6. Պատմահայրը նկատի ունի մարական թագավոր Աժդահակին (Աստիագես):*

*7. **Արգամ** կամ **Արգավան** (ըստ երևույթին՝ Արշամ) - Մուրացյան նախարարական տան նահապետը. Արտաշեսից ստացած նրա «երկրորդական գահ» պաշտոնի կամ գործակալության մասին, դժբախտաբար, մենք այլ վկայություն չունենք, ուստի դժվար է ասել, թե այն ինչ բովանդակություն է ունեցել:*

*8. Երվանդը չարամտորեն Արտաշեսին «մար» (մեղացի) էր հորջորջում վարկաբեկելու միտումով:*

*9. Ըստ Խորենացու ժամանակագրության, Դարեհ Վերջինի թագավորության 29-րդ տարին համապատասխանում է Ք. հ. 52 թվականին, ուրեմն այս թվականին է, որ, ըստ Խորենացու, գահ է բարձրացել Արտաշես I-ը: Սա ակնհայտորեն չփոթմունք է. Արտաշեսը թագավոր է հռչակվել Ք. ա. 189 թվականին:*

*10. **Երվազ** - Երվանդ Վերջինի եղբայրն է, Հայաստանի գերագույն քրմապետը:*

*11. Այս իրադարձությունները նկարագրելիս Մովսես Խորենացին օգտվել է Դարանաղյաց Անիի՝ Արամազդի տաճարի քուրմ Ողյումպի (Օղյումպ, Օլիմպիոս) «Մեհենական պատմություններից»: Սակայն, Պատմահայրը Ողյումպից քաղած դրվագները (Արտաշես I-ի մասին) սխալմամբ տեղավորել է ժամանակագրական տեսակետից օտար միջավայրում՝ Ք. հ. I դարի կեսերին:*

*12. Գողթանը Վասպուրականի 33-րդ գավառն էր, ընդգրկում էր հետագայի Ապրակունիսի և Օրդուբադի շրջանները: Այս գավառը հնուց ի վեր հռչակված էր իր ժողովրդական գուսան-երգիչներով:*

*13. Խորենացին վիպասանական երգերն ու առասպելները համարում է այլաբանություն և հաճախ աշխատում է տալ ոչ թե դրանց անաղարտ տեքստը, այլ միայն մեկնությունը:*

*14. **Արտեմիս** - հավերժ դեռատի և չքնաղ աստվածուհի, Զևսի և Լեթոյի դուստրը: Սկզբում լուսնի աստվածուհի, հետագայում՝ որսորդության: Հայաստանում նույնացվել է Անահիտի հետ:*

*15. **Ապոլոն** - Զևսի և Լեթոյի որդին, Արտեմիսի երկվորյակ եղբայրը: Համարվել է լույսի, արվեստի և երաժշտության աստվածը: Հայաստանում նույնացվել է Տիր աստծու հետ:*

## ՊՈԼԻԲԻՈՍԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

*Հույն պատմագիր Պոլիբիոսը գրել է Ք. ա. 220–146 թթ. միջև ընկած ժամանակաշրջանի Հռոմեական հանրապետության և հելլենիստական երկրների փոխհարաբերությունների պատմությունը: Նրա «Պատմություն» վերտառությամբ աշխատությունը, փաստորեն առաջին փորձերից մեկն էր ժամանակի համաշխարհային պատմությունը համահավաք շարդրելու ուղղությամբ:*

*Պոլիբիոսի սույն երկասիրությունը բաղկացած է եղել 40 գրքերից, սակայն, դժբախտաբար, այն ամբողջությամբ չի պահպանվել. մեզ է հասել միայն հինգ գիրք և առանձին պատառիկներ մյուս գրքերից: Այստեղ, հելլենիստական Արևելքի երկրների՝ այդ թվում և Հայաստանի մասին եղած հաղորդումներն ու տեղեկությունները կցկտուր են ու խիստ թերի: Այնուհանդերձ, Պոլիբիոսը մի շարք արժեքավոր ու եզակի տեղեկություններ է հաղորդում Մեծ Հայքի ու Ծոփքի Ք. ա. III դարի առաջին կեսի պատմության վերաբերյալ:*

*Պոլիբիոսը ծնվել է Ք. ա. 210 թվականին, Արկադիայի Մեգալոպոլիս քաղաքում, բարձրաշխարհիկ ընտանիքում: Երիտասարդության տարիներին գործուն մասնակցություն է ունեցել Աքայական դաշնակցային պետության քաղաքական կյանքին, 169 թ. ընտրվել է այդ դաշնակցության հիպպարքոսի պաշտոնում: Սակայն Ք. ա. 167 թվականին նա պատանդ է տարվում Հռոմ, ուր և մնում է շուրջ 16 տարի: Այստեղ էլ վերջնականապես ձևավորվում են Պոլիբիոսի հակադեմոկրատական, պահպանողական արիստոկրատական հայացքները: Իր երկասիրությունում, նա հանդես է գալիս Հռոմի նվաճողական քաղաքականությունը պաշտպանելու և այն հիմնավորելու դիրքերում: Պոլիբիոսը մահացել է մոտ Ք. ա. 127 թվականին:*

*Պոլիբիոսի «Պատմությունից» ստորև բերվող հատվածները տրվում են Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ, որը կատարված է «***Polybius,** Historiae, V. 1-6, Cambridge, Mass.-London, 1960, (Loed Classical Library)*» հրատարակությունից:*

ՊՈԼԻԲԻՈՍ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## *Գիրք VIII, 25*

*1-5.Քսերքսեսի[1] թագավորության ժամանակ Արմոսատա[2] քաղաքում, որը գտնվում է այսպես կոչված Գեղեցիկ դաշտում[3], Եփրատի և Տիգրիսի միջև, Անտիոքոս թագավորը[4] քաղաքը պաշարելով վերցնելու մտադրությամբ՝ բանակել էր նրա մոտ[5]: Տեսնելով (Անտիոքոս) թագավորի պատրաստությունները, Քսերքսեսը նախ փորձեց փախուստի միջոցով փրկվել, բայց քիչ ժամանակ անց նա զղջաց, վախենալով, որ մայրաքաղաքը թշնամու ձեռքն ընկնելու դեպքում ինքը կարող է կորցնել ամբողջ թագավորությունը: Ուստի դեսպաններ ուղարկելով Անտիոքոսի մոտ, հայտնեց, որ ցանկանում է բանակցություն սկսել նրա հետ: Անտիոքոսի հավատարիմ ընկերները խորհուրդ չէին տալիս թագավորին ձեռքից բաց թողնել պատանուն, այլ համոզում էին, որ քաղաքը գրավելով, իշխանությունը հանձնի Միհրդատին, որը նրա քեռորդին էր[6]: Բայց թագավորը չլսեց նրանցից ոչ մեկին, իր մոտ հրավիրեց պատանուն, հաշտվեց նրա հետ և նույնիսկ զիջեց նրան հարկի մեծագույն մասը, որը պարտավոր էր իրեն վճարել (Քսերքսեսի) հայրը: Այնուհետև, ստանալով Քսերքսեսից 300 տաղանդ և հազար ձի ու հազար ջորի լծասարքով, նա վերադարձրեց նրան ամբողջ իշխանությունը և նրան ամուսնացրեց իր Անտիոքիս քրոջ հետ[7]: Այսպիսով,Անտիոքոսը իր արքայական վեհանձնությամբ, որ ցուցաբերել էր ներկա դեպքում՝ ձեռք բերեց երկրի բնակիչների բարեկամությունն ու երախտիքը:*

## *Գիրք XXVI, 6*

*1-12. Հանկարծակի և դաժան հարձակման ենթարկված լինելով, Փառնակեսը[8] պատրաստ էր ընդունելու ամեն մի առաջարկ[9]. ուստի նա դեսպաններ ուղարկեց Եվմենեսի[10] ու Արիարաթեսի[11] մոտ: Եվմենեսն ու Արիարաթեսը լսելով նրանց, իրենք ևս իսկույն իրենց դեսպաններին ուղարկեցին Փառնակեսի մոտ, և այս բանը երկուստեք բազմիցս կրկնվելով, հաշտություն կնքվեց հետևյալ պայմաններով[12], թող մշտական խաղաղություն լինի մի կողմից՝ Եվմենեսի, Պրուսիասի[13] և Արիարաթեսի, մյուս կողմից՝ Փառնակեսի և Միհրդատի[14]*

*միջև: Փառնակեսը և ոչ մի ձևով չպետք է արշավի Գալատիայի վրա և գալատների հետ նախկինում նրա կնքած բոլոր պայմանագրերը պետք է համարվեն անվավեր: ... Որոշվեց նաև, որ Փառնակեսը պետք է առանց փրկագնի վերադարձնի ռազմագերիներին և փախստականներին: ... Որշվեց նաև, որ Արմենիայի[15] սատրապ Միհրդատը պետք է վճարի 300 տաղանդ, որովհետև սա դրժելով Եվմենեսի հետ կնքած դաշինքը, պատերազմեց Արիարաթեսի դեմ[16]: Այդ դաշինքին մասնակից դարձվեցին Ասիայի իշխաններից Արտաշեսը[17]՝ Արմենիայի մեծագույն մասի տիրակալը, և Ակուսիլոքոսը[18]:*

*1. Քսերքսեսը Ծոփքի թագավորն էր (մոտ 220-201), ըստ երևույթին, նա որդին էր Ծոփք-Կոմմագենեի միացյալ պետության թագավոր Արշամի (Արսամես), որի իշխանության տարիներն են Ք. ա. III դարի 40-30-ական թվականները:*

*2. **Արմոսատա** - Ծոփքի մայրաքաղաք Արշամաշատն է. հիմնադրել է Արշամ թագավորը՝ Արածանիի ձախ ափին, այժմյան Խարաբա-Նաջարան ավերակ գյուղի մոտ:*

*3. **Գեղեցիկ դաշտ** (Հրաշալի հովիտ) - Արածանիի հովիտն է կամ Անթիաս դաշտավայրը, այժմ՝ Խարբերդի դաշտը:*

*4. Խոսքը Սելևկյան տերության թագավոր Անտիոքոս III Մեծի (223-187) մասին է:*

*5. Անտիոքոս III-ի՝ Ծոփքի դեմ ձեռնարկած սույն հարձակումը տեղի է ունեցել Ք. ա. 212-205 թթ.՝ նրա հայտնի Արևելյան արշավանքի նախօրյակին. ամենայն հավանականությամբ՝ հենց 212 թ. սկզբներին:*

*6. Այս Միհրդատը Անտիոքոս III -ի քրոջ և մի հայ մեծատոհմիկի որդին էր: Մոտ 201 թ. Անտիոքոսը նրան նշանակում է Փոքր Հայքի սատրապ:*

*7. Մոտ 201 թվականին, ունենալով եղբոր՝ Անտիոքոս III-ի ցուցումը՝ Անտիոքիսը սպանեց Քսերքսեսին. դրանով իսկ, Ծոփքը վերածվեց սելևկյան սատրապության, իսկ այնտեղ կառավարիչ (ստրատեգոս) կարգվեց հայ մեծատոհմիկ Զարեհը:*

*8. **Փառնակես** - Պոնտոսի թագավոր Փառնակ I-ն է (185-170), Պոնտական թագավորության հզորության հիմնադիրը:*

*9. 183 թվականին Փառնակը ռազմական արշավանք էր ձեռնարկել Գալատիայի, Պերգամոնի և Կապադովկիայի դեմ, սակայն պարտություն կրելով՝ ստիպված էր հաշտություն խնդրել:*

*10. **Եվմենես** - խոսքը Պերգամոնի թագավոր Եվմենես II Սոտերի (197-160) մասին է:*

*11. **Արիարաթես** - խոսքը Կապադովկիայի թագավոր Արիարաթես IV-ի (220-163) մասին է:*

*12. Հաշտության պայմանագիրը կնքվել է 179 թվականին:*

*13.* ***Պրուսիաս*** *– խոսքը Բյութանիայի թագավոր Պրուսիաս II-ի (մոտ 182–149) մասին է:*

*14. Միհրդատը Փոքր Հայքի սելևկյան կառավարիչ-սատրապն էր, որը Ք. ա. 180 թվականից հանդես է գալիս որպես անկախ տիրակալ: Այս իրադարձությունների ժամանակ նա գործում էր Փառնակի դաշնակից դերում:*

*15. Խոսքն այստեղ վերաբերում է Փոքր Հայքին:*

*16. Պայմանագրին նախորդող և հետևող իրադարձությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ, իրոք, Միհրդատն այդ ժամանակ արդեն անկախ միապետ էր:*

*17. Խոսքը Մեծ Հայքի թագավոր Արտաշես I-ի (189–160) մասին է:*

*18.* ***Ակուսիլոքոս*** *– ենթադրվում է, որ սա պետք է լինի Ծոփքի Զարեհ թագավորի որդին:*

## ՍՐՏԱԲՈՆԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԲՆԱՇԽԱՐՀԻ ԵՎ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ, XI, 14*

***1. Հայաստանի հարավը պաշտպանում է Տավրոսը, որը այն բաժանում է Եփրատի և Տիգրիսի միջև գտնված ամբողջ երկրից, որը կոչում են Միջագետք. արևելքում այն սահմանակից է Մեծ Մեդիային և Ատրոպատենեին. հյուսիսից Կասպից ծովի վերևի Պարաքոաթրա[1] լեռներն են և Աղվանները և Իբերները և այս ազգերին ներփակող Կովկասը, որը հասնելով Հայաստանին՝ միանում է Մոսքիկյան[2] և Կոլխիսի (Կողքիս, Կոլխիդա) լեռներին, մինչև տիբարեններ կոչվածների երկիրը. արևմուտքից այս (տիբարենների) ազգն է և Պարիադրեսը և Սկյուդիսեսը[3] մինչև Փոքր Հայք և Եփրատահովիտը, որ Հայաստանը բաժանում է Կապադովկիայից և Կոմմագենեից:***

***2. Եփրատը սկիզբը առնելով Տավրոսի հյուսիսային կողքից, նախ հոսում է Հայաստանի միջով դեպի արևմուտք, հետո շրջվում է դեպի հարավ և կտրում Տավրոսը Հայաստանի և Կապադովկիայի և Կոմմագենեի միջև, (այնուհետև) դուրս գալով այնտեղից և հասնելով Սիրիա, շրջվում է դեպի ձմեռային արևելք[4] մինչև Բաբելոն և ստեղծում է Միջագետքը Տիգրիսի մոտ: Այս երկուսը վերջանում են Պարսից ծոցում: Ամբողջ շրջապատը լեռնային է ու քարքարոտ, բացի Մեդիայի կողմը գտնվող փոքր մասից: Դարձյալ հիշյալ Տավրոսից անդին, որը***

*սկսվում է Կոմմագենեն և Մելիտենեն եզերող Եփրատի հակառակ ափին, հարավում կա Մասիոս լեռը[5], որը գտնվում է Միջագետքում եղած Միգդոնիայից վերև, որում և Մծբինն է: Հյուսիսային կողմում ընկած է Սոփենեն[6], Մասիոս լեռան և Անտիտավրոսի միջև: Այս (լեռը) սկիզբ առնելով Եփրատից ու Տավրոսից, վերջանում է Հայաստանի արևելյան կողմերում, մեջտեղում ընդգրկելով Սոփենեն, իսկ մյուս կողմից ունենալով Ակիլիսենեն[7], որը գտնվում է Տավրոսի և Եփրատ գետի միջև, մինչև սրա դեպի հարավ թեքվելը. Սոփենեի արքայանիստը Կարկաթիոկերտն է[8]. Մասիոսից վերև, շատ արևելք, Գորդյուենեի[9] երկարությամբ, գտնվում է Նիփատեսը[10], հետո Աբոսը[11], որից հոսում են և' Եփրատը, և' Արաքսը. մեկը դեպի արևմուտք, մյուսը դեպի արևելք. այնուհետև Նիբարոսը[12] ձգվում է մինչև Մեդիա:*

*3. Արդեն ասվեց, թե Եփրատը ինչ ուղղությամբ է հոսում: Իսկ Արաքսը հոսելով դեպի արևելք մինչև Ատրոպատենե, թեքվում է դեպի արևմուտք և հյուսիս ու հոսում է նախ Ազարայի[13], ապա Արտաշատի՝ Հայաստանի քաղաքների մոտով: Այնուհետև Արաքսի դաշտի միջով դուրս է գալիս Կասպից ծով:*

*4. Բուն Հայաստանում կան շատ լեռներ և լեռնադաշտեր, որտեղ որթատունկը հեշտությամբ չի աճում. (կան նաև) շատ հովիտներ, մի մասը՝ միջակ, մյուսները՝ խիստ բերրի, ինչպես Արաքսի դաշտը, որով Արաքս գետն է հոսում մինչև Ալբանիայի եզրերը և թափվում է Կասպից ծով. այնուհետև՝ Շակաշենը[14], որը և սահմանակից է Ալբանիային և Կուր գետին, հետո Գոգարենեն[15]: Այս ամբողջ երկիրը լի է բերքով և ընտանի ու մշտադալար ծառերով, ունի նաև ձիթենի: Փավենեն[16] ևս Հայաստանի գավառներից է, և, Կոմիսենեն[17] և Օրքիստենեն, որ տալիս է մեծաքանակ հեծելազոր: Խորզենեն[18] և Կամբյուսենեն ամենահյուսիսայիններն են և առավել ձյունառատ, որոնք սահմանակցում են Կովկասյան լեռներին և Իբերիային ու Կոլխիսին: Ասում են, թե այնտեղ լեռնանցքներում հաճախ ամբողջ քարավաններ բուքի ժամանակ մնում են ձյան տակ: Նման վտանգների համար նրանք գավազաններ ունեն, որոնք հանում են (ձյան) մակերեսից դուրս, շնչառության, ինչպես նաև անցորդներին նշան տալու համար, որպեսզի օգնության հասնեն, դուրս հանեն և փրկեն իրենց: Ասում են, թե ձյան մեջ դատարկ սառցագնդիկներ են գոյանում, որոնք պարունակում են պիտանի ջուր. սրանց պատյանը ջարդելով, խմում են (ջուրը): Ձյան մեջ աճում են կենդանիներ, որոնց Ապոլլոնիդեսը[19] կոչում է որդեր, իսկ Թեոփանեսը՝[20] շղափուկներ: Այս կենդանիների ծնունդը պատկերացնում են այնպես, ինչպես մետաղների բոցից*

*թուչող կայծերից (ծնվող) մոծակների (ծնունդը)։*

*5. Պատմում են, թե Հայաստանը նախապես փոքր լինելով, աճել է Արտաքսիասի և Զարիադրիսի[21] միջոցով, որոնք նախկինում եղել են Անտիոքոս Մեծի[22] ստրատեգոսները, իսկ հետագայում, նրա պարտությունից հետո, թագավորել է սա՝ Սոփենեի, Ակիսենեի և Օդոմանտիսի և մի քանի այլ գավառների վրա, նա էլ՝ Արտաշատի շրջակայքում։ Երկուսն էլ աճեցին շրջակա ազգերից հողեր գրավելով. Մարերից՝ Կասպիանեն[23], Փավնիտիսը և Բասորոպեդան[24], Իբերներից՝ Պարիադրես լեռան ստորոտները[25], և Խորզենեն և Գոգարենեն, որը գտնվում է Կուրի մյուս կողմը[26], Խալյուբներից և Մոսյունոյկներից՝ Կարենիտիսը[27] և Դերքսենեն[28], որոնք Փոքր Հայքին սահմանակից են և կամ նրա մասն են կազմում, Կատաոններից՝[29] Ակիլիսենեն և Անտիտավրոսի շրջանը, Ասորիներից՝ Տամոնիտիսը[30], ուստի և բոլորը միալեզու են։*

*6. Հայաստանի քաղաքներն են Արտաքսատան (որը կոչում են և Արտաքսիասատա, որը Հաննիբալը[31] կառուցել է Արտաքսիաս թագավորի համար) և Արքսատան[32], երկուսն էլ Արաքսի վրա, Արքսատան՝ Ատրոպատիայի սահմանների մոտ, իսկ Արտաքսատան՝ Արաքսի դաշտի մոտ. այն լավ համաբնակեցված է և երկրի արքայանիստն է. գտնվում է (գետա)թևի կազմած թերակղզու վրա, նրա պարիսպը չուրջանակի պատում է գետը՝ բացի պարանոցից, իսկ պարանոցը չրջափակված է փոսով և պատնեչով։ Քաղաքից ոչ չատ հեռու գտնվում էին Տիգրանի և Արտավազդի գանձատները, Բաբյուրսա և Օլանե անառիկ ամրոցները[33]։ Ուրիչները ևս կային Եփրատի վրա։ Արտագեյրան[34] ապստամբեց բերդապետ Ադդոնի գլխավորությամբ[35]. Կեսարի[36] զորավարներն երկար ժամանակ պաչարելով, գրավեցին այն և պարիսպները քանդեցին։*

*7. Երկրում չատ գետեր կան. նշանավորագույն են Փասիսը[37] և Լյուկոսը[38], որոնք թափվում են Պոնտական ծովը. Երատոսթենեսը[39] Լյուկոսի փոխարեն ոչ ճիշտ կերպով դնում է Թերմոդոնը, իսկ Կուրը և Արաքսը թափվում են Կասպից (ծով), Եփրատը և Տիգրիսը՝ Կարմիր ծով։*

*8. Հայաստանում կան նաև մեծ լճեր, մեկը Մանտիանեն է, Կապույտ թարգմանվող[40], որը, ինչպես ասում են, Մայոտիսից[41] հետո մեծագույնն է աղի լճերի մեջ և տարածվում է մինչև Ատրոպատիա, ունի նաև աղահանքեր. մյուսը՝ Արսենեն, որը կոչում են նաև Թոպիտիս[42]. այն պարունակում է բորակ և զգեստները լվանում է ու մաքրում. այդ պատճառով էլ ջուրը խմելու չէ[43]։ Տիգրիսը, իջնելով Նիփա –*

*տես լեռից, անցնում է դրա միջով, անխառն պահելով իր հոսանքը, ուժգնության պատճառով, որից էլ գետի անունը. մարերեն Տիգրիս կոչում են նետաձգությունը: Սա բազմատեսակ ձկներ ունի, մինչդեռ լճայինները միայն մեկ տեսակ են[44]: Լճի խորշի մոտ գետն ընկնում է վիհի մեջ[45] և երկար տարածություն գետի տակով տարվելուց հետո, դուրս է գալիս Քալինտիսի մոտ. այնտեղից էլ (հոսելով) դեպի Օպիս[46] և Սեմիրամիսի[47] կոչված պատնեշը, այն իջնում է դեպի Գորդվացիները, աջում թողնելով ամբողջ Միջագետքը, մինչդեռ Եփրատը (հոսում) է այս նույն երկիրը իր ձախ կողմում ունենալով: Իրար մոտենալով և ձևացնելով Միջագետքը, մեկը Սելևկիայով թափվում է Պարսից ծոցը, իսկ մյուսը՝ Բաբելոնով, ինչպես ասվել է Երատոսթենեսի և Հիպպարքոսի[48] մասին խոսելիս:*

*9. Ոսկու հանքեր կան Սյուսպիրիտիսի[49] մեջ, Կաբալայում[50], որ - տեղ Ալեքսանդրը ուղարկեց Մենոնին զինվորներով. սա խեղդամահ արվեց տեղաբնակների կողմից: Կան նաև այլ հանքեր, հատկապես սանդիկս կոչվածը, որը կոչում են նաև «Հայկական գույն» և նման է կալքեի: Երկիրը այնքան հարուստ է ձիաբուծման արոտներով, ոչ պակաս Մեդիայից, որ Նեսայան ձիերը[51], այստեղ ևս լինում են, որ օգտագործում էին Պարսից արքաները, և Հայաստանի սատրապը Պարսիկին[52] ամեն տարի ուղարկում էր երկու բյուր մտրուկ Միհրականքի[53] համար: Արտավազդը[54] բացի մյուս ձիավորներից, վեց հազարանոց զրահապատ հեծելազոր կարգի դնելով՝ ցուցադրեց Անտոնիոսին, երբ նրա հետ արշավեց Մեդիա: Այսպիսի հեծյալների նախանձախնդիր են ոչ միայն մարերը և հայերը, այլև աղվանները. քանզի նրանք ևս օգտագործում են զրահապատված (ձիեր):*

*10. Երկրի հարստության և զորության փոքր նշան չէ այն, որ Պոմպեոսը Տիգրանին, Արտավազդի հորը, վեց հազար տաղանդ արծաթ տուգանք նշանակած լինելով, (սա) անհապաղ հռոմեական զորքերին բաշխեց՝ յուրաքանչյուր զինվորին 50 դրաքմե, (յուրաքանչյուր) հարյուրապետին՝ հազար (դրաքմե), իսկ (յուրաքանչյուր) հեծելապետին և հազարապետին՝ մեկ տաղանդ[55]:*

*11. Երկրի մեծությունը Թեոփանեսը հաշվում է լայնքը՝ հարյուր սքոյնոս[56], երկարությունը՝ կրկնակի, մեկ սքոյնոսը դնելով քառասուն ասպարեզի (հավասար): Սա չափազանցությամբ է ասված: Ճշմարտության առավել մոտ է երկարությունը՝ նրա ասած լայնքը, իսկ լայնքը՝ դրա կեսը կամ փոքր-ինչ ավելի: Այսպիսին է Հայաստանի բնությունը և զորությունը:*

*13. Կարծում են, թե Արաքսը (այսպես) կոչվել է Արմենոսի ուղե-*

*կիցների կողմից Պենեոս գետի[57] հետ (ունեցած) նմանության պատճառով: Քանզի այն ևս կոչվել է Արաքս այն պատճառով, որ ճեղքելով Տեմպե[58] (կիրճը) Օսսան կտրել է Օլիմպոսից[59]: Ասում են, թե նախկինում Արաքսը ևս լեռներից իջնելով, ելք չունենալու պատճառով լայնանում էր ու ծովանում ստորադիր դաշտերում, իսկ Յասոնը Տեմպեի նմանությամբ կառուցել է կիրճը, որով այժմ ջուրը ցած է հոսում Կասպից ծով: Սրանից էլ մերկացել է Արաքսի դաշտավայրը, որի միջով հոսելով, գետը հասնում է ջրվեժին: Արաքս գետի մասին պատմված այս զրույցն ունի ինչ որ հավանականություն. մինչդեռ Հերոդոտոսինը՝ ոչ այնքան: Քանզի նա ասում է, թե այն հոսելով Մատիենե երկրից՝ բաժանվում է քառասուն գետի, անջատելով Սկյութներին և Բակտրիաններին. Կալլիսթենեսը[60] ևս հետևել է նրան:*

*14. Պատմում են նաև, թե Այնիաններից[61] ոմանք բնակվել են Ուիտիայում[62], մյուսները՝ Հայաստանից վերև, Աբոսից և Նիբարոսից, որոնք Տավրոսի մասերից են, այն կողմ: Սրանցից Աբոսը մոտիկ է Բարիսին[63] տաճարի կողքով Էկբատանա տանող ճանապարհին: Ասում են նաև, որ Թրակիացիներից ոմանք, որոնց կոչում են Սարապարներ, այն է՝ գլխահատներ, բնակվել են Հայաստանից վերև, Գուրանցվոց և Մարաց մոտ: Սրանք եղել են գազանաբարո մարդիկ և անհնազանդ լեռնցիներ, մորթ մաշկող և գլխահատ. քանզի այդ է նշանակում Սարապարես: Մեդեայի մասին խոսել ենք Մեդականքի մեջ[64], ուստի այս ամենից եզրակացնում են, թե մեդացիները և հայերը ցեղակից են թեսսալացիներին և Յասոնի ու Մեդեայի (սերունդներին):*

*1. **Պարաքոաթրա** (նաև Պարիադրես) –Հայկական աղբյուրների Խաղտյաց կամ Պարխարյան լեռնաշղթան է, որը ձգվում է Սև ծովի հարավային եզերքով դեպի արևելք:*

*2. Լեռներ Պոնտոսի և Հայաստանի միջև, այժմ՝ Կարչխալի և Աճարայի լեռներ:*

*3. **Սկյուդիսես** – Պոնտական լեռների բազուկներից մեկը, որ վերջինս կապում է Անտիտավրոսի հետ:*

*4. Այսինքն՝ հարավ:*

*5. **Մասիոս** (Իզալա, Տուր-Աբդին) – Մեծ Հայքը Միջագետքից եզերող լեռնապար:*

*6. Հունական աղբյուրներում Ծոփքը կոչվում էր Սոփենե:*

*7. **Ակիլիսենե** – Հայոց Եկեղյաց կամ Անահտական գավառն է:*

*8. **Կարկաթիոկերտ** (Արկաթիակերտ) – Ծոփքի մայրաքաղաքը, տեղադրվում է Անգեղ տուն գավառում՝ միջնադարյան Անգղ բնակավայրի տեղում, այժմ՝ Էգիլ:*

*9. **Գորդյուենե** – Կորդվաց աշխարհն է:*

*10. **Նիփատես** (Նպատ) – սա Զագրոս (Կոհ ի Նիհորական) լեռնային սիստեմի հյուսիսային հատվածն է, որը Հայաստանի մասում անտիկ հեղինակները կոչում էին Նպատ՝ հատվածի գագաթներից մեկի՝ Նպատի (2332 մ) անունից:*

*11. **Աբոս** – Սրմանց կամ Բյուրակն հրաբխային զանգվածն է, այժմ՝ Բինգյոլ:*

*12. Տավրոսի բազուկներից մեկն է, որը Ասորեստանի հյուսիսային սահմաններից ձգվում է մինչև Մարաստան, այժմ՝ Ջյուդի-դաղ:*

*13. Քաղաք Արտաշատից դեպի արևմուտք, տեղադրությունը հայտնի չէ:*

*14. **Շակաշեն** (Սակասենե) – Կուր գետի աջափնյա տարածքում գտնվող հայկական գավառ, ներկայիս Գյանջայի շրջանը:*

*15. **Գոգարենե** – հայկական Գուգարքն է՝ Մեծ Հայքի աշխարհներից մեկը:*

*16. **Փավենե** (Փավնիտիս) – գավառ, որը Արտաշես II-ի դեպի Մարաստան կատարած արշավանքից հետո միացվեց Հայաստանին: Տեղադրությունը պարզ չէ, գուցե նույնանում է Փայտակարանի հետ:*

*17. **Կոմիսենե** – հին Հայաստանի ծայր հյուսիսային գավառներից մեկը, Կամբյուսենե (Կամբեջան) երկրի հայկական մասը, որը Կուր գետով բաժանվում էր Իբերիայից ու Աղվանքից:*

*18. **Խորզենե** – հայկական գավառ Կուր գետի ակունքների շուրջն ընկած տարածքում, հետագայի Կղարջք գավառը:*

*19. Հույն մատենագիր՝ Ստրաբոնի աղբյուրներից մեկը:*

*20. **Թեոփանես Միտիլենացի** – հույն աշխարհագիր, որը մասնակցել է Ք. ա. 66 թ. դեպի Հայաստան Պոմպեոսի կազմակերպած արշավանքին:*

*21. Խոսքը Արտաշեսյան հարստության հիմնադիր, Մեծ Հայքի թագավոր Արտաշես I -ի և Ծոփքի թագավոր Զարեհի մասին է:*

*22. **Անտիոքոս Մեծ** – սա Սելևկյան տերության թագավոր Անտիոքոս III Մեծն է:*

*23. **Կասպիանե** – Կուրի և Արաքսի գետախառնուրդի շրջանն է և նրանից արևելք՝ մինչև Կասպից ծովն ընկած տարածքը: Խորենացին այն անվանում է Կասբից երկիր (տե՛ս «Պատմություն Հայոց», գիրք Բ, գլ. 53):*

*24. **Բասորոպեդա** – սա համընկնում է Վասպուրականի Պարսպատունիք գավառին:*

*25. Պարիադրես (Պարխար) լեռների ստորոտը համապատասխանում է Հայոց Գողերձական գավառին:*

*26. Այս երեք գավառներն էլ (Գուգարք, Խորզենե, Գողերձական) հենց սկզբից ընդգրկված են եղել Երվանդունիների պետության կազմի մեջ և միայն Ք. ա. III դարի վերջերին են անցել Վրաստանին: Հետևաբար, Ստրաբոնը չփոթում է, երբ գրում է, թե Արտաշեսը նվաճեց դրանք. այս գործողությունը պետք է դիտել որպես վերամիավորում:*

*27. **Կարենիտիս** – Կարնո աշխարհն է՝ Բարձր Հայքի իններորդ գավառը, այժմյան Էրզրումի սանջակը:*

*28.* ***Դերքսենե*** *– սա Բարձր Հայքի վեցերորդ գավառ Դերջանն է, այժմյան Թերջանը՝ Եփրատ գետի հովտում:*

*29.* ***Կատաոններ*** *– ցեղային միություն, որն ապրում էր Եփրատից արևելք՝ անտիկ հեղինակների Կատաոնիայում:*

*30.* ***Տամոնիտիս*** *– Հայագիտության մեջ այս երկրանունը սրբագրելու երկու փորձ է եղել՝ Տարոնիտիս (Տարոն) և Տամորիտիս (Տմորիք) իմաստներով:*

*31.* ***Հաննիբալ Բարկա*** *(247–188) – Հին աշխարհի ականավոր զորավար, Կարթագենի պետական գործիչ, Հռոմի ոխերիմ հակառակորդը: Պարտություն կրելով հռոմեացիներից, Ք. ա. 195 թ. ապաստանեց Անտիոքոս III Մեծի մոտ, սակայն վերջինիս՝ հռոմեացիներից կրած պարտությունից հետո (Մագնեսիա, 190 թ.), անցավ Բյութանիա, ուր և Ք. ա. 183 թ. ինքնասպանությամբ վերջ տվեց իր կյանքին: Ուսումնասիրողների թերահավատությունը Հաննիբալի Հայաստանում լինելու մասին վերջերս կարծես սկսում է փարատվել:*

*32.* ***Արքսատա*** *– քաղաք Արաքսի ափին, Նախճավանի կողմերը: Հետազոտողները գտնում են, որ այն հայերեն պետք է հնչեր Արշատ:*

*33.* ***Բաբյուրսա և Օլանե*** *– ամրոցներ, ուր պահվում էին Հայաստանի պետական գանձերը. տեղադրությունները անորոշ են:*

*34.* ***Արտագեյրա*** *(Արտագերս) – անառիկ ամրոց պատմական Հայաստանի Արշարունյաց գավառում, այժմ՝ Քերս գյուղը:*

*35. Ստրաբոնը նկատի ունի Արտագերս ամրոցի վերակացու Ադդոն (ըստ երևույթին՝ Ատոմ) զորավարին, որը Ք. հ. 2 թվականի սեպտեմբերի 9-ին դաշույնով ծանր վիրավորեց Արտագերսը պաշարած հռոմեական զորքերի հրամանատար, Օգոստոս կայսեր որդեգիր Գայոս Կեսարին:*

*36. Խոսքը Օգոստոս կայսեր թոռան և որդեգիր Գայոս Կեսարի մասին է:*

*37.* ***Փասիս*** *– գետ Կողքիսում, այժմ՝ Ռիոն:*

*38.* ***Լյուկոս*** *(Գայլ գետ) – Իրիսի վտակներից մեկը, այժմ՝ Գելգիտ-չայ:*

*39.* ***Էրատոսթենես Կիրենացի*** *(276–194) – Հույն նշանավոր աշխարհագրագետ, բանաստեղծ և քերական, գիտական աշխարհագրության հիմնադիրը, Ալեքսանդրիայի գրադարանի ղեկավարներից մեկը: Գրել է երեք գրքերից բաղկացած «Աշխարհագրություն», որը մեզ չի հասել:*

*40. Խոսքը Հայկական լեռնաշխարհի և Իրանական սարահարթի միջև տարածվող Կապուտան (Ուրմիա) լճի մասին է, գտնվում է 1275 մ բարձրության վրա:*

*41.* ***Մայոտիս*** *– Ազովի ծովն է:*

*42.* ***Արսենե*** *(Թոպիտիս) – Վանա (Բզնունյաց կամ Ռշտունյաց) լիճն է, գտնվում է 1720 մ բարձրության վրա:*

*43. Վանա լճի ջրերը պարունակում են մեծ քանակությամբ կալիումի և նատրիումի կարբոնատ, քլորիդներ և սուլֆատներ. աղիությունը 19,1 տոկոս է:*

*44. Ստրաբոնը նկատի ունի տառեխ ձուկը:*

*45. Ստրաբոնը չփոթում է, քանզի Վանա լճի ջրերը ելք չունեն, իսկ Տիգրիսն էլ հոսում է այլ հունով՝ լճից շատ հեռու:*

*46. **Քալինտիս** և **Օպիս** – բնակավայրեր Հյուսիսային Միջագետքում:*

*47. **Սեմիրամիս** – հայկական Շամիրամն է:*

*48. **Հիպպարքոս** – հույն նշանավոր աստղաբաշխ, որի գործերը մեզ չեն հասել:*

*49. **Սյուսպիրիտիս** – Բարձր Հայքի յոթերորդ գավառն է, հայկական Սպերը. ընդգրկում է Ճորոխ գետի վերին հոսանքը, այժմ՝ Իսպիր: Կա նաև տեսակետ, որ այն համապատասխանում է ասուրական արձանագրությունների Շուբրիա երկրին, որը տեղադրվում է Աղձնիքում:*

*50. Քաղաք Սպեր գավառում:*

*51. **Նեսայան ձիեր** – արագավազ և դիմացկուն ձիերի մի տեսակ, որ տարածված էր Մարաստանում և Պարսկաստանում:*

*52. Այսինքն՝ Պարսից արքայից արքա:*

*53. Այստեղից պարզվում է, որ պարսից Միհր աստծո տոնախմբությունների համար Հայաստանը տրամադրում էր 20 հազար մտրուկ:*

*54. Խոսքը Հայոց Արտավազդ II թագավորի (55–34) մասին է:*

*55. Տե՛ս 358-րդ էջ, ծան. № 6–9:*

*56. **Սքոյնոս** (բառացիորեն՝ պարան) – երկարության միավոր. մեկ սքոյնոսը հավասար է 40 ասպարեզի, այսինքն՝ յոթ կիլոմետրի: Ուրեմն, ըստ Թեոփանեսի, Հայաստանի լայնությունը հասնում էր 700 կիլոմետրի, իսկ երկարությունը՝ 1400 կիլոմետրի, որն, անշուշտ, չափազանցություն է:*

*57. Գետ Հյուսիսային Հունաստանում (Թեսսալիա), այժմ՝ Սալամբրիա, նախապես կոչվում էր Արաքս:*

*58. **Տեմպե** – կիրճ և հովիտ Թեսսալիայում՝ Օլիմպոս և Օսսա լեռնազագաթների միջև:*

*59. Բնագրի այս հատվածում կա հայերենով չարտահայտվող հունարեն բառախաղ:*

*60. **Կալլիսթենես Օլինթացի** (370–328) – հույն պատմագիր, Արիստոտելի ազգականն ու աշակերտը, Ալեքսանդր Մակեդոնացու աշակերտակիցն ու ընկերը: Կալլիսթենեսը ուղեկցել է Ալեքսանդրին՝ նրա արշավանքների ընթացքում և դրանց տպավորության ներքո գրել «Գործք Աղեքսանդրի» երկը, որից միայն առանձին հատվածներ են պահպանվել:*

*61. Թեսսալական ծագում ունեցող ցեղեր:*

*62. Տեղադրությունը հայտնի չէ, սակայն որոշ գիտնականներ այն նույնացնում են Հայոց Ուտիք նահանգի հետ:*

*68. Պարսկական աստվածություն:*

*64. Այսինքն՝ «Աշխարհագրության» Մեդիային նվիրված բաժնում:*

## ՊԼԻՆԻՈՍ ԱՎԱԳԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԲՆԱՇԽԱՐՀԻ ՄԱՍԻՆ

*Հռոմեական ականավոր պատմագիր, գիտնական ու քաղաքական գործիչ Գայոս Պլինիոս Սեկունդոսը ծնվել է Ք. հ. 23 թվականին՝ Հյուսիսային Իտալիայի Կոմ քաղաքում: Նա ստացել է իր ժամանակների համար բազմակողմանի ու փայլուն կրթություն, ճանապարհորդել է բազմաթիվ երկրներով: Երկար տարիներ վարել է պատասխանատու պաշտոններ (կայսերական պրոկուրատոր՝ Նարբոնյան Գալլիայում, Իսպանիայում և Հռոմեական Աֆրիկայում, հռոմեական հեծելազորի հրամանատար՝ Գերմանիայում և այլն): Պլինիոսը մահացել է 79 թ. օգոստոսի 24-ին՝ Վեզուվի ժայթքման հետևանքով, 56 տարեկան հասակում:*

*Պլինիոս Ավագն ունեցել է բեղմնավոր գրիչ, գրել է յոթ մեծածավալ ստեղծագործություններ («Գերմանական պատերազմներ»՝ 20 գրքով, «Պատմություն»՝ 31 գրքով, «Բնական պատմություն»՝ 37 գրքով և այլն), որոնցից մեզ է հասել միայն «Բնական պատմությունը»: «Բնական պատմությունը» Պլինիոսը գրել է Վեսպասիանոս կայսեր որդու՝ Տիտոսի հանձնարարությամբ և ավարտվել է այն 77 թվականին: Պլինիոս Ավագի սույն երկը անտիկ բնագիտական մտքի մի յուրահատուկ հանրագիտարան է, որտեղ արժեքավոր ու բացառիկ տեղեկություններ են պահպանված տիեզերագիտության, երկրագործության, աշխարհագրության, բուսական ու կենդանական աշխարհների, հանքաբանության, բժշկության, տեղ-տեղ նաև հին աշխարհի երկրների քաղաքական, մշակութային պատմության ու հասարակական հարաբերությունների վերաբերյալ: Մեզ համար հատկապես կարևոր են Պլինիոսի տեղեկությունները Հայաստանի բնակլիմայական պայմանների, բնաշխարհի, հանքային հարստությունների, քաղաքների ու վարչական բաժանման մասին, որոնք չատ հաճախ եզակի են ու անփոխարինելի:*

*Պլինիոս Ավագից ստորև բերված հատվածները տրվում են Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ, որը կատարված է «*Plinii Secundi C. Naturalis historiae, vol. 1-10, Cambridge, Mass.-London, 1950-1962 (Loed Classical)*» հրատարակությունից:*

*ԳԱՅՈՍ ՊԼԻՆԻՈՍ (ԱՎԱԳ) ՍԵԿՈՒՆԴՈՍ*

*ԲՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

## *Գիրք V*

*XX. Այստեղ է, որ ամենից ավելի հարմարն է Եփրատի մասին խոսել: Այն բխում է Մեծ Հայքի Կարենիտյան պրեֆեկտուրայում[1]: Այդ գետը ամենամոտից տեսնողներից Դոմիտիոս Կորբուլոնը[2] նրա ակունքը տեղադրում է Աբա լեռան վրա, իսկ Լիկինիոս Մուկիանոսը՝ Կապոտեն լեռան[3] ստորոտին, Զիմարայից[4] 12.000 քայլ վերև: Այդ գետը նախ կոչվում է Պյուքսիրատ<ես>: Այն հոսում է Կապադովկիայից բաժանելով նախ Դերքսենեն[5], ապա Անաիտիսը[6], որոնք Հայաստանի շրջաններն են: Դասկուսան[7] Զիմարայից 75.000 քայլ հեռավորություն ունի: Այնտեղից մինչև Պաստոնա Եփրատը նավարկելի է 50.000 քայլ տարածության վրա. մինչև Կապադովկիայի Մելիտենե քաղաքը (գետի երկարությունն է) 24.000 քայլ, մինչև Հայաստանի Ելեգեա[8] քաղաքը՝ 10.000 քայլ, այս տարածության վրա այն ընդունում է Լյուկոս[9], Արսանիաս[10] և Արսանոս գետերը: Ելեգեայում գետն իր ճանապարհի վրա հանդիպում է Տավրոս լեռանը, որը նրան չի դիմադրում, չնայած 12.000 քայլ հաստություն ունեցող իր զանգվածին: Գետը Օմիրաս է կոչվում, երբ լեռն է ներխուժում, այն հաղթահարելուց հետո արդեն կոչվում է Եփրատ, նրա հունը ժայռոտ է և հոսանքը սրընթաց, նույնիսկ այդ լեռն անցնելուց հետո[11]:*

## *Գիրք VI*

*IX. Մեծ Հայքը, որը սկսվում է Պարիադրես լեռներից[12], ինչպես ասացինք, Կապադովկիայից բաժանված է Եփրատով, և Եփրատից հետո Միջագետքից բաժանված է Տիգրիսով, որը նվազ հայտնի գետ չէ: (Մեծ Հայքը) ծնունդ է տալիս թե՛ մեկին, թե՛ մյուսին և կազմում է սկիզբը Միտջագետքի, որը տարածվում է երկու գետերի միջև. այդտեղ միջանկյալ տարածությունը բնակեցված է Արոեացի[13] արաբների կողմից: Այսպիսով այն ձգում է իր սահմանը մինչև Ադիաբենե, նրանից բաժանված լինելով լայնակի մի լեռնաշղթայով[14], իսկ ձախ կողմում, լայնությամբ տարածվում է մինչև Կյուրոս գետը՝[15] անցնելով Արաքս գետից այն կողմ, իսկ իր երկարությամբ տարածվում է մինչև Փոքր Հայքը, որից բաժանված է Եվքսինյան Պոնտոսի մեջ թափվող Ապսարոս գետով[16] և Ապսարոսին*

*ծնունդ տվող Պարիադրես լեռներով:*

*X. Կյուրոս (գետը) ծնվում է Հենիոքիական լեռներում, որոնք այլոց կողմից կոչվել են Կորաքսյան[17]: Արաքսը (ծնվում) է միևնույն լեռներում, ինչպես և Եփրատը՝ 6.000 քայլ միջանկյալ հեռավորությամբ և աճելով Մու[ր]սիս գետակով[18], ինքը թափվում է ըստ մի քանի աղբյուրների, Կյուրոսի մեջ, որը նրան տանում է Կասպից ծով:*

*Փոքր Հայքում հայտնի քաղաքներն են՝ Կեսարիան, Ազան, Նիկոպոլիսը[19], Մեծ Հայքում՝ Ար<սա>մոսատը[20] Եփրատին մոտ, Կարկաթիոկերտը[21] Տիգրիսի մոտ, Տիգրանակերտը մի բլրի վրա, Արտաշատը՝ դաշտավայրում, Արաքսի մոտ: Ալֆիդիոսի կարծիքով, ամբողջ Հայաստանի տարածությունը 5.000.000 քայլ է, Կլավդիոս կայսրը նրա երկարությունը Դասկուսայից մինչև Կասպից ծովի ափը հաշվում է 1.300.000 քայլ, իսկ լայնությունը (այդ թվի) կեսը, Տիգրանակերտից մինչև Իբերիա[22]: Ստույգ է, որ այն բաժանված է ստրատեգիաներ[23] կոչված պրեֆեկտուրաների, որոնցից մի քանիսը թագավորություններ էին կազմում հնում: Նրանք թվով 120 են և բարբարոսական անուններ ունեն: Արևելքում Հայաստանը սահմանագծված է, սակայն ոչ անմիջապես Կերավնյան լեռներով[24] և Ադիաբենեով: Միջանկյալ տարածությունը բռնում են Սոփենները[25]: Սոփեններից այն կողմ մի լեռնաշղթա է գտնվում, իսկ լեռնաշղթայից այն կողմ Ադիաբենեն է: Հայաստանին ամենամոտ բարձրունքների վրա ապրում են մենոբարդցիները, մոկսիանները[26]: Ադիաբենեին շրջապատում են Տիգրիսը և անմատչելի լեռները: Նրա (Ադիաբենեի) ձախ կողմում մեդացիների երկիրն է, իսկ դիմացը՝ Կասպից ծովը, որը, ինչպես իր տեղում կասենք, օվկիանոսից է առաջանում և ամբողջովին շրջապատված է Կովկասյան լեռնաշղթայով:*

*Հիմա թվարկենք Հայաստանի սահմանամերձ շրջաններում ապրող ժողովուրդներին:*

*XI. Ամբողջ դաշտավայրը, Կյուրոսից սկսած, բռնում է ալբանների ժողովուրդը, հետո՝ իբերները, որոնք նրանից բաժանված են Ալազան գետով, որն իջնում է Կովկասից և գնում է թափվելու Կյուրոսի մեջ: Ամենակարևոր քաղաքներն են Ալբանիայում՝ Կաբալակ(ա)ն[27], Իբերիայում՝ Հարմաստիսը՝[28] (գետի մոտ), Նեորիսը: (Այնտեղ են) Թասիայի և Թրիարեյի շրջանները[29] մինչև Պարիադրես լեռները: Նրանցից այն կողմ՝ Կողքիսի ամայի տարածությունները: Այդ տարածությունների այն մասում, որը նայում է Կերավնյան լեռներին, բնակվում են արմենոխալիբները[30]. մոսխների երկիրը[31] մինչև Իբերոս գետը, որը թափվում է Կյուրոսի մեջ. նրանցից ներքև սակասենները[32],*

*այնուհետև մակրոնները[33] մինչև Ապսարոս գետը. սրանք են դաշտավայրերի և գառիվայրերի բնակիչները: Հակառակ կողմից, Ալբանիայի սահմաններից սկսած, լեռների ամբողջ չարքի դիմաց գտնվում են սիլվերի վայրի ժողովուրդները, նրանցից ներքև՝ լուբիենների ժողովուրդը, այնուհետև դիդուրները և սոդիացիները[34]:*

*1.* ***Կարենիտյան պրեֆեկտուրա*** *– Կարնո գավառն է՝ Բարձր Հայքի 9-րդ գավառը, այժմյան Էրզրումի սանջակը:*

*2. Խոսքը հռոմեական նշանավոր զորավար, Կապադովկիայի կուսակալ, լեգատ և Արևելքում հռոմեական բանակների հրամանատար Դոմիտիոս Կորբուլոնի մասին է:*

*3.* ***Կապոտեն*** *– Կապույտ (Ծաղկավետ) լեռնաշղթան է, որի հարավային լեռնաբազուկներում են գտնվում բուն Եփրատի (կամ Արևելյան Եփրատ, այժմ՝ Կարա-սու) ակունքները:*

*4.* ***Զիմարա*** *– քաղաք Փոքր Հայքում:*

*5.* ***Դերքսենե*** *– Դերջանն է, Բարձր Հայքի 6-րդ գավառը:*

*6.* ***Անաիտիս*** *– Անահտական գավառն է (կամ Եկեղյաց), Բարձր Հայքի 4-րդ գավառը, անտիկ հեղինակների Ակիլիսեննեն, այժմյան Երզնկայի շրջանը:*

*7.* ***Դասկուսա*** *– բնակավայր Փոքր Հայքում, այժմյան Արաբկիր-չայի գետաբերանից արևմուտք, Կոշբենիք գյուղից հյուսիս:*

*8.* ***Հայաստանի Ելեգեա*** *– Եղեգիսի ջերմուկներն են, այժմ՝ Իլիջան, Կարինից արևմուտք:*

*9.* ***Լյուկոս*** *– չպետք է շփոթել Իրիս գետի (այժմ՝ Եշիլ-Ըրմակ) Լյուկոս վտակի (Գայլ գետ, Թերմոդոն) հետ: Այստեղ խոսքը այն Գայլ գետի մասին է, որը սկիզբ է առնում Եղի-Դերեկար լեռնանցքից և Երզնկայի մոտ թափվում է Եփրատը:*

*10.* ***Արսանիաս*** *– հայկական սկզբնաղբյուրների Արածանի գետն է (Արևելյան Եփրատ), այժմ՝ Մուրադ-չայ:*

*11. Իր ակունքներից մինչև Տավրոսյան լեռները, այսինքն՝ Հայկական լեռնաշխարհի տարածքում, Եփրատի երկարությունը կազմում է ավելի քան 600 կիլոմետր:*

*12.* ***Պարիադրես*** *– խոսքը Պոնտական-Պարխարյան (Խաղտյաց) լեռների մասին է:*

*13. Պլինիոսն այստեղ նկատի ունի Արուաստան երկիրը, այսինքն՝ անտիկ հեղինակների Միգդոնիան, որի կենտրոնն էր Մծբինը:*

*14. Խոսքը անտիկ հեղինակների Նիփատես լեռնաշղթայի մասին է, որը գտնվում է Փոքր Խաբուր գետից դեպի արևելք:*

*15. Այսինքն՝ Կուր (Քուռ) գետը:*

*16.* ***Ապսարոս*** *– Ճորոխի ստորին հոսանքը, որտեղից սկսվում է Պարխարյան լեռնաշղթան:*

*17. **Կորաքսյան** – Պլինիոսը նկատի ունի Կարմիր Փորակ (այժմ՝ Ալահյուսակ-բար) ջրբաժան լեռնաշղթան Կարսի և Արտահանի միջև:*

*18. **Մուրսիս** – հայկական Մուրց գետն է, այժմ՝ Հասան Ղալա-սու:*

*19. Այս երեք քաղաքներն էլ գտնվել են Գայլ գետի հովտում: Ս. Երեմյանի կարծիքով, Կեսարիան պետք լինի Սատաղը (այժմ՝ Սադաղ), Ազան՝ այժմյան Ազիզ գյուղը, իսկ Նիկոպոլիսը՝ այժմյան Բյուրգ կամ Պյուրկ գյուղի մոտ (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. I, ԳԱ հրատ., էջ 838):*

*20. **Ար<սա>մոսատա** – հայկական Արշամաշատն է, տեղադրվում է Անթիաս դաշտավայրում, Արածանի գետի ափին՝ այժմյան Խարաբա-Նաջարան ավերակ գյուղի մոտ:*

*21. **Կարկաթիոկերտ** – Ծոփքի մայրաքաղաք Արկաթիակերտն է, տեղադրվում է Անգեղ տուն գավառում, այժմ՝ Էգիլ:*

*22. Այսպիսով, ըստ Պլինիոսի, Մեծ Հայքը արևմուտքից դեպի արևելք ձգվում է 1.300 մղոն (այսինքն՝ 1.950 կմ), իսկ հարավից մինչև հյուսիս՝ 650 մղոն (այսինքն՝ 975 կմ): Ուսումնասիրողներն իրավացիորեն նշում են, որ այս թվերը չափազանցված են. իրականում Մեծ Հայքի երկարությունը հավասար էր 870 կմ, իսկ լայնությունը՝ 550 կիլոմետրի (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. I, ԳԱ հրատ., էջ 838, ծան. 78):*

*23. **Ստրատեգիա** – հին աշխարհի վարչատարածքային միավոր:*

*24. Կերավնյան լեռները (Շանթային լերինք) Կովկասյան լեռնաշղթայի այն մասն են, որը հյուսիսից եզերում է Աղվանքը: «Աշխարհացույց»-ում այն կոչվում է «Կապ-կոհ լերինք»:*

*25. Այսինքն՝ ծոփացիները:*

*26. Ցեղեր, որոնք ապրում էին Արևելյան Տիգրիսի հովտում և սրան հարող լեռներում: Մոկսիանների ցեղը ազգակից էր հայերին. նրանց անունից է ծագել Մեծ Հայքի Մոկք (Մոկս) նահանգի անունը:*

*27. **Կաբալակա** – հայկական աղբյուրների Կապաղակ քաղաքն է, այժմ Կաբալա գյուղը Նիժ գյուղի մոտ:*

*28. **Հարմաստիս** – խոսքը Արմազի-Մցխեթա քաղաքի մասին է:*

*29. Խոսքը Թռեղք (Թրիալեթի) գավառի մասին է:*

*30. **Արմենոխալիբներ** – բառացիորեն՝ հայախալիբներ, Հայաստանում բնակվող խալիբներ՝ ցեղեր, որոնք գտնվում էին մերձսևծովյան հարավարևելյան շրջանում. խալիբների այն մասը, որը ժամանակի ընթացքում ձուլվեց հայերի հետ:*

*31. Մոսխերի երկիրը համապատասխանում է հայոց Գողերձական կուսակալությանը, որտեղ բնակվում էր վրացական մեսխ կամ մոսխ ցեղը:*

*32. **Սակասենե** – հայկական Շակաշենն է, Ուտիքի 7-րդ գավառը՝ Կուր գետի հովտի աջակողմյան մասում:*

*33. **Մակրոններ** – ցեղեր, որոնք բնակվում էին Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմուտքում՝ Ճորոխի ավազանում:*

*34. Սրանք կովկասյան լեռնաբնակ ցեղեր էին:*

## ՓՈՔՐ ՀԱՅՔԸ ԸՍՏ ՍՏՐԱԲՈՆԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅԱՆ

### *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ, XII, 3*

***28. Փառնակիայի[1] և Տրապեզունտի գավառներից վերև մինչև Փոքր Հայք Տիբարեններն են և Խալդայները: Փոքր Հայքը բավական բարեբեր երկիր է: Այն ևս, ինչպես Սոփենեն, միշտ կառավարել են իշխանները, որոնք մերթ եղել են մյուս հայոց[2] բարեկամ, մերթ էլ իրենց գործերը վարել ինքնուրույն[3]: Նրանց հպատակվել էին խալդայներն ու տիբարենները. այնպես որ իրենց իշխանությունը տարածել էին մինչև Տրապեզունտ և Փառնակիա: Իսկ Միհրդատ Եվպատորը ուժեղանալով, դարձավ տերը Կոլխիսի և այս բոլոր (երկրների), որոնց Սիսիդի որդի Անտիպատրոսը հանձնեց նրան[4]: Միհրդատը այնպես հոգ տարավ այդ վայրերի մասին, որ այնտեղ կառուցեց 75 ամրոց, որտեղ պահ դրեց իր գանձերի մեծագույն մասը: Սրանցից հիշատակության ամենաարժանիներն են՝ Հյուդարան, Բասգոյդարիզան և Սինորիան[5]. սա առաջացել է Մեծ Հայքի սահմանի վրա, որի համար էլ Թեոփանեսը այն կոչում է Սինորիա[6]. Պարիադրեսի ամբողջ լեռնոտ երկիրը, լինելով ջրառատ, անտառաշատ և ամեն կողմից գահավեժ ձորերով ու վիհերով բաժանված, այդպիսի շատ հարմարություններ ուներ: Ուստի և այստեղ կառուցեց իր գանձատների մեծագույն մասը և վերջում էլ Միհրդատը՝ Պոմպեոսի արշավանքի ժամանակ[7], ապաստանեց այստեղ, Պոնտական թագավորության ծայրամասում, և Ակիլիսենեում, Դաստեյրայի[8] մոտ գրավելով ջրառատ մի լեռ, քանզի մոտ էր Եփրատը, որը բաժանում է Ակիլիսենեն Փոքր Հայքից, մինչև որ պաշարվելուց հետո ստիպվեց լեռների միջով փախչել Կոլխիս և այնտեղից էլ Բոսփոր: Պոմպեոսը այս վայրի մոտ՝ Փոքր Հայքում կառուցեց Նիկոպոլիս քաղաքը[9], որը այժմ ևս մնում է և լավ է բնակեցված:***

*1. **Փառնակիա** (Կերասունտ) – քաղաք Պոնտոսում, այժմ՝ Գիրեսուն նավահանգիստը Թուրքիայում:*

*2. Նկատի ունի Մեծ Հայքը:*

*3. Փոքր Հայքը Ք. ա. III–II դդ. (մինչև Պոնտոսին միացվելը) առանձին Հայ -*

*կական թագավորություն էր՝ Եփրատի և Անտիտավրոսի միջև ընկած տարածքում:*

*4. **Անտիպատրոս** – հայ իշխանավոր, որը Ք. ա. 112 թ. Փոքր Հայքը հանձնեց Միհրդատ Եվպատորին:*

*5. Ամրոցներ Փոքր Հայքում. սրանցից միայն Սինորիայի տեղադրությունն է որոշակի: Այն գտնվել է Գաղտառիճից Սատաղ տանող ճանապարհի վրա՝ Աշկալայից մոտ 15 կմ դեպի հյուսիս-արևմուտք, Եփրատ գետի մոտ:*

*6. Սինորիա նշանակում է «սահմանային»:*

*7. Պոմպեոսը Միհրդատի դեմ իր արշավանքն սկսեց Ք. ա. 66 թ. գարնանը:*

*8. **Դաստեյրա** – ամրոց Փոքր Հայքում, միջնադարյան հայկական Դաստարակ գյուղն է, այժմ՝ Դոստալի գյուղը Ջիմարայի մոտ:*

*9. **Նիկոպոլիս** – այս քաղաքը հիմնադրել է Գնեոս Պոմպեոսը՝ ի նշանավորումն Միհրդատ Եվպատորի դեմ տարած հաղթանակի, Գայլ (Լյուկոս) գետի ափին այժմյան Բյուրգ կամ Պյուրկ գյուղի մոտ:*

## ՊԼՈՒՏԱՐՔՈՍԸ ԱՐՏԱՇԱՏ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ՀԻՄՆԱԴՐՄԱՆ ՄԱՍԻՆ

***Պլուտարքոսը Հռոմեական կայսրության շրջանի հունական պատմագրության ամենաաչքի ընկնող դեմքերից մեկն է: Նա ծնվել է Ք. հ. շուրջ 45 թվականին, Բեովտիայի Քերոնեա քաղաքում, բարձրաշխարհիկ ընտանիքում: Ստացել է իր ժամանակի համար փայլուն կրթություն, սովորել է Աթենքի ուսումնագիտական կենտրոնում: Որոշ ժամանակ բնակվել է Հռոմում և մոտիկ հարաբերություններ հաստատել Տրայանոս և Հադրիանոս կայսրերի հետ: Մտել է պետական ծառայության մեջ՝ վարելով արքոնտի և պրոկուրատորի պաշտոններ, եղել է Դելփյան տաճարի քուրմ, միաժամանակ զբաղվել է նաև ճարտասանությամբ, գրականությամբ ու փիլիսոփայությամբ: Պլուտարքոսը մահացել է Քերոնեայում մոտ 127 թվականին:***

***Պլուտարքոսը ունեցել է բեղուն գրիչ. նրա շուրջ 210 անուն աշխատություններից մեզ են հասել 150-ը, որոնք բաժանվում են երկու խմբի՝ կենսագրական-պատմագրական և բարոյախոսական: Առաջին խումբը, որը կոչվում է «Զուգահեռ կենսագրություններ» («Զուգակշիռք»), իրենից ներկայացնում է մի հավաքածու՝ հունական և հռոմեական քաղաքական ու ռազմական հանրահայտ 70 գործիչների զուգահեռ շարադրված (մի հույն և մի հռոմեացի) կենսագրություններ: Սրանցից մեզ են հասել 23 զույգ զուգահեռ կենսագրություն-***

*ներ և չորս կենսագրություն առանձին, ընդամենը՝ 50 կենսագրություն: Ինչպես խոստովանում է Պլուտարքոսը՝ «Զուգահեռ կենսագրությունները» զուտ պատմական երկեր չեն, այլ դրանք իր հերոսների նկարագրի բնութագրումներն են, նրանց մարդկային արժանիքների ու թուլությունների գրական դիմանկարները: Հակասելով պատմական իրողությանը, քննադատաբար չմոտենալով իրադարձություններին՝ Պլուտարքոսը գունազարդում է իր նկարագրած պատմական գործիչներին, և ընդհակառակը՝ խիստ բացասական գծերով բնութագրում Հռոմի քաղաքական հակառակորդներին: Պլուտարքոսի բացահայտ հռոմեական կողմնորոշումը և ծայր աստիճան միտումնավորությունը իրենց զգացնել են տալիս հատկապես այն ժամանակ, երբ նա խոսում է միհրդատյան և հայ-հռոմեական պատերազմներին մասնակցած զորավարների (Լուկուլլոս, Պոմպեոս, Կրասսոս, Անտոնիոս) մասին: Նա արդարացնում է հռոմեական ընչաքաղց ու փառամոլ այդ զորավարների նվաճողական պատերազմներն Արևելքում, գեղազարդում Հռոմի եսակենտրոն, չահադիտական նկրտումները մյուս ժողովուրդների նկատմամբ:*



*Պլուտարքոս*

*Այնուհանդերձ, Պլուտարքոսի «Զուգահեռ կենսագրությունները» անհրաժեշտ աղբյուր են Հայաստանի պատմության ուսումնասիրության համար: Այստեղ մեծ թվով տեղեկություններ կան Ք. ա. I դարի Հայաստանի քաղաքական ու մշակութային կյանքի վերաբերյալ, որոնք, սակայն, պետք է օգտագործել խիստ խնամքով ու զգույշ:*

*Պլուտարքոսից ստորև բերված բոլոր հատվածները տրվում են նրա «Կենսագրություններ» երկասիրության հին հունարեն բնագրի հայերեն հատվածական թարգմանությունից, որը կատարել է Ս. Մ. Կրկյաշարյանը (Երևան, 2001):*

## ՊԼՈՒՏԱՐՔՈՍ

## ԶՈՒԳԱՀԵՌ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԼՈՒԿՈՒԼԼՈՍ

*31. ... Պատմում են, թե կարթագենացի Հաննիբալը, հռոմայեցիներից Անտիոքոսի[1] կրած վերջնական պարտությունից հետո[2], գնաց Հայ Արտաշեսի մոտ և հրահանգիչ ու խորհրդատու դարձավ նրան օգտավետ ձեռնարկներում: Բացի այդ, նկատելով երկրում չօգտագործված և անտեսված հարմարագույն և խիստ հաճելի մի վայր[3], նա այդ տեղում ուրվագծեց քաղաքի հատակագիծ: Հաննիբալը այնտեղ տարավ Արտաշեսին և, ցույց տալով տեղանքը, համոզեց նրան այդ վայրում քաղաք հիմնել[4]: Թագավորը սիրով համաձայնվեց և խնդրեց, որ նա ստանձնի այդ գործի ղեկավարությունը[5]: Այսպիսով, կառուցվեց մեծ և չատ գեղեցիկ քաղաք, որը կոչվեց Թագավորի անունով և հռչակվեց Հայաստանի մայրաքաղաք:*



**Հաննիբալ**

*1. Խոսքը Սելևկյան թագավոր Անտիոքոս III Մեծի մասին է:*

*2. Այստեղ հեղինակը նկատի ունի Ք. ա. 190 թ. Անտիոքոս Մեծի՝ հռոմեացիներից կրած պարտությունը Մագնեսիայի ճակատամարտում:*

*3. Այդ վայրը այժմյան Խոր-վիրապի չրջակայքն է՝ Արաքսի ձախ ափին:*

*4. Պլուտարքոսի հաղորդումը Արտաչատի հատակագծի մասին խիստ կարևոր է: Արտաչատը արտաքինից այնպիսի տեսք է ունեցել, որ առիթ է տվել Պլուտարքոսին պնդելու, թե քաղաքի կառուցման հիմքում ընկած է եղել մեկ միասնական հատակագիծ: Ընդ որում, դա ապացուցվում է նաև Արտաչատում կատարվող հնագիտական պեղումների տվյալներով:*

*5. Գիտության մեջ հաստատված այն կարծիքը, թե Հաննիբալի այցը Հայաստան անհավանական է, այժմ ենթակա է վերանայման: Հաննիբալը կարող էր կարճ ժամանակ ապրած լինել Հայաստանում անմիջապես Անտիոքոս III-ի՝ Մագնեսիայի մոտ հռոմեացիներից կրած պարտությունից (190 թ.) հետո (տե՛ս* ***И. Ш. Кораблев,*** *Ганнибал, М., 1976, էջ 319):*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ՍԱՀՄԱՆԱՔԱՐԵՐԻ ՄԱՍԻՆ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԾԶ*

*Բոլոր առաքինությունների և ճշմարիտ գործերից հետո Արտաշեսը հրամայում է գյուղերի և ագարակների սահմանները որոշել, որովհետև նա մեր երկիրը բազմամարդացրեց շատ ժողովուրդներ բերելով, որոնց բնակեցրեց լեռներում, հովիտներում ու դաշտերում: Սահմանների համար նա նշաններ հաստատեց այսպես. հրամայեց տաշել քառակուսի ձևով քարեր, մեջները պնակի նման փոսացնել և թաղել հողի մեջ, իսկ նրանց վրա կանգնեցնել քառակուսի կոթողներ՝ գետնից քիչ բարձր[1]: Սրա վրա նախանձելով՝ Սասանորդի Արտաշիրը[2] հրամայում է Պարսկաստանում էլ նույնանման անել և իր անունով կոչել, որպեսզի Արտաշեսի անունը չհիշվի:*

*Բայց ասում են, թե Արտաշեսի ժամանակ մեր Հայաստանում անմշակ հող չմնաց, ոչ լեռնային և ոչ դաշտային, այնքան շենացել էր երկիրը:*

*1. Արտաշես I-ի կանգնեցրած հողաբաժան սահմանաքարերի մասին Խորենացու տված սույն նկարագրությունը երկար ժամանակ համարվել է Պատմահոր երևակայության արդյունք և հռչակվել անվավեր: Հետագայում, այդ քարերից մի քանիսի հայտնաբերումից հետո, Խորենացու հաղորդումը ճանաչվել է վավերական:*

*2. Խոսքը Սասանյան հարստության հիմնադիր Արտաշիր Պապականի (224-241) մասին է:*

## ԱՐՏԱՇԵՍ I-Ի ԱՐԱՄԵԵՐԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

***Արտաշես I-ի ու նրա ժամանակի, կատարած նորամուծությունների մասին նշանակալից աղբյուրներ են նրա արամեերեն լեզվով թողած արձանագրությունները: Այդ արձանագրությունները հայտնաբերվել են շնորհիվ պատահական գյուտերի և առ այսօր դրանցից հայտնի են տասնմեկը (հինգը՝ Սևանից): Արձանագրությունների վերծանությամբ զբաղվել են Ա. Յա. Բորիսովը, Ի. Մ. Դյակոնովը, Կ. Բ. Ստարկովան, Ա. Դյուպոն-Սոմերը, Գ. Տիրացյանը, Ա. Գ. Փերիխանյանը և ուրիշներ: Բոլոր ուսումնասիրողներն էլ (չնչին բացառու-***

*թյուններով) պնդում են, որ այս արձանագրությունները Արտաշես I-ի հողաբաժան այն սահմանաքարերն են, որոնց մասին որոշակիորեն հիշատակել էր դեռևս Մովսես Խորենացին (տե՛ս սույն հատորի 296-րդ էջը):*

*Գյուղերի և ագարակների հողաբաժան այդ սահմանաքարերը, ինչպես նշում է Գ. Խ. Սարգսյանը, արդյունք էին Արտաշես I-ի հողային այն բարենորոգումների, որոնց նպատակն էր կարգավորել հողի մասնավոր սեփականության զարգացման ընթացքը , մեղմել հողատերերի և գյուղական համայնքների միջև ստեղծված հակասությունները: Արձանագրությունները արժեքավոր վկայություններ են պարունակում նաև Արտաշես I-ի ծագման, տոհմի և պատվատիտղոսի մասին:*

*Նկատի ունենալով, որ արձանագրությունները մեծ մասամբ միօրինակ են (առանձին բացառություններով), քրեստոմատիայում բերում ենք դրանցից միայն երկուսը:*

*1.*

*Արձանագրությունը հայտնաբերվել է 1957 թ. մայիսին, Սևանա լճի հարավարևմտյան կողմում՝ Մարտունու շրջանի Ծակքար գյուղի դաշտում. բարձրությունը 77 սմ է, լայնությունը՝ 36 սմ, հաստությունը՝ 17 սմ: Կոթողի վերևի մասը պսակված է երեք բնորոշ ատամնլուստներով:*

*Արձանագրության հայերեն տեքստը տալիս ենք Գ. Տիրացյանի թարգմանությամբ (տե՛ս ԳԱ «Տեղեկագիր», հասարակական գիտություններ, 1957, № 10, էջ 105-109):*

1. Արտաշես արքան,
2. Զարեհի որդին[1],
3. Երվանդական[2], բաժանեց
4. հողը
5. մասերի (բաժինների)[3]

1. Արտաշես I-ի հայրը՝ Զարեհը, հայ մեծատոհմիկ էր, որը, հավանաբար, ամուսնացած էր Երվանդունիների թագավորական հարստության արքայադուստրերից մեկի հետ:

2. Ըստ երևույթին, ճշմարտություն է այն, որ Արտաշեսը սերում էր Երվանդունիներից, սակայն ոչ ուղիղ գծով (այսինքն՝ հոր), այլ՝ մոր կողմից: Ինչևէ, Արտաշեսն իրեն համարում էր տապալված Երվանդունի հարստության շառավիղ,



*Թեղուտի արձանագրությունը*

*որպեսզի դրանով ամրապնդեր իր իշխանության իրավական հիմքերը և բարձրացներ հեղինակությունը:*

*3. Հավանաբար այստեղ ևս պետք է ընթերցել «գյուղերի միջև» (տե՛ս Հաջորդ արձանագրության 5-րդ տողը):*

## *2.*

***Արձանագրությունը հայտնաբերվել է 1971 թ. Իջևանի շրջանի Թեղուտ գյուղի մոտակայքում՝ իր կրկնօրինակի հետ միասին:***

***Արձանագրություն պարունակող կոթողը վերևում ունի 42 սմ, իսկ ներքևում (պատվանդանին ամրացնելու համար նախատեսված ելուստի մոտ)՝ 23 սմ լայնություն: Բարձրությունը առանց ելուստի՝ 66 սմ, հաստությունը՝ 22 սմ: Ելուստի երկարությունն է 32 սմ: Առկա են և կոթողը պսակող ատամնելուստները:***

***Արձանագրությունը ընթերցել է Ա. Փերիխանյանը (տե՛ս*** **A. Périckhanian,** Les inscriptions araméennes du roi Artash ès, «Revue des E'tudes Arméniennes» (nouvelle série), t. VIII, Paris, 1971, էջ 169-174)***: Արձանագրության ստորև բերված հայերեն տեքստը տալիս ենք համաձայն Ա. Փերիխանյանի ֆրանսերեն թարգմանության:***

*1. Արտաշես արքա Երվանդականի,*
*2. Զարեհի որդու, Բարու[1], Թագակրի,*
*3. Խշատրայի[2] դաշնակցի, հաղթողի այն ամենը, ինչ քաջալերում է չարը, 10-րդ տարում[3]։ Արտաշեսը՝*
*4. Զարեհի որդին, բաժանեց*
*5. Հողը գյուղերի միջև։*

*1. Հելլենիստական երկրներում լայն կիրառում ունեին պատվատիտղոսները, որոնցով չեշտվում էր այս կամ այն տիրակալի գործունեության կամ խառնվածքի հատկանշանակ կողմը։ Արտաշես I-ի «Բարի» պատվատիտղոսը համասարազոր է հունական «Եվսեբեսին» («Բարեպաշտ») կամ «Եվերգետեսին» («Բարեգործ»)։*

*2. **Խշատրա** (Շահր) – զրադաշտականության մեջ համարվում էր անմահներից մեկը՝ Ամեշա Սպենտան կամ Ամահրասպանդը։*

*3. Արձանագրությունը, հետևաբար, գրված է շուրջ Ք. ա. 180 թվականին։*

## ՀԱՅ-ՍԵԼԵՎԿՅԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ (Ք. Ա. 165 Թ.) ԸՍՏ ՊՈՐՓՅՈՒՐԻԻ ԵՎ ՀԻԵՐՈՆԻՄՈՍԻ

***Ք. ա. II դ. 60-ական թվականներին Մեծ Հայքի թագավորության և Սելևկյան տերության փոխհարաբերությունների, նրանց միջև 165 թ. սկսված ռազմական բախման և հարակից այլ հարցերի մասին որոշ տեղեկություններ են պահպանվել քրիստոնեական եկեղեցու ամենակարկառուն հայրերից մեկի՝ Հիերոնիմոսի (335-420) մոտ։***

***Հիերոնիմոսը ժամանակի աչքի ընկնող մտավորականներից մեկն էր, նա թողել է պատմական, քերականական, թարգմանական, աստվածաբանական և այլ բնույթի բազմաթիվ գործեր, որոնց թվում Վուլգատան՝ Աստվածաշնչի լատիներեն թարգմանությունը, և Եվսեբեոս Կեսարացու «Քրոնիկոնի» համառոտագրված լատիներեն թարգմանությունը։ Իր մեկնողական երկերից մեկում Հիերոնիմոսը վերլուծության է ենթարկում հայտնի հույն փիլիսոփա և պատմաբան Պորփյուրի (234-305) ստեղծագործություններից մեկը, որտեղ հեղինակը քննարկում է Դանիելի մարգարեությունը, նպատակ ունենալով ցույց տալ, թե դա ոչ այլ ինչ է, եթե ոչ «անցյալի վրա հիմնված մարգարեություն»։ Պորփյուրի նպատակն է եղել ցույց տալ, որ Դանիելի մարգարեությունները ծայրեծայր հիմնված են պատմական, և այն էլ անձնապես Անտիոքոս IV Եպիփանեսին վերաբերող դեպ-***

*քերի վրա, ուստի և նա Հիերոնիմոսի միջոցով մեզ հասած խնդրո առարկա հատվածներում ջանում է այդ պատմական փաստերը, այդ թվում Արտաշես I-ի և Հայաստանին վերաբերող, միահյուսել Դանիելի մարգարեության համապատասխան հատվածներին: Հիերոնիմոսը մեկ առ մեկ մեջ է բերում Պորփյուրի կողմից առաջարկված՝ Դանիելի գրքի հատվածների մեկնությունները և խսկույն քննադատության ենթարկում դրանք՝ բերելով իր փաստարկները և կատարելով լրացումներ: Ահա այս դեպքերում է, որ Հիերոնիմոսը անդրադառնում է հայ-սելևկյան պատերազմին, որի ելքի մասին նրա հաղորդածը շատ կողմերով տարբերվում է Դիոդորոս Սիկիլիացու և Ապպիանոսի համապատասխան վկայություններից:*

*Հիերոնիմոսից ստորև բերված հատվածների թարգմանությունը լատիներենից կատարել է Գ. Խ. Սարգսյանը՝* «Patrologiae cursus complectus. Tomus XXV, **S. Hieronymi**, tomus V, Parisiis, 1845» *հրատարակությունից, որը վերցրել ենք նրա «Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին» (Երևան, 1966) աշխատությունում զետեղված «Նոր մատենագրական նյութեր Արտաշես I-ի մասին» հավելվածից (էջ 242–247):*

ՀԻԵՐՈՆԻՄՈՍ

## Գիրք V

*Անհիմն կերպով Պորփյուրը փոքրիկ եղջյուրի տակ, որը բուսնել է տաս եղջյուրներից հետո[1], ենթադրում է Անտիոքոս Եպիփանեսին[2], և տաս եղջյուրներից երեք պոկվածների մեջ (տեսնում) վեցերորդ Պտղոմեոսին՝ Փիլիպատոր մականվամբ[3], յոթերորդ Պտղոմեոսին, Եվերգետես մականվամբ[4] և Հայաստանի թագավոր Արտաքսիասին... Թեև գիտենք, որ Անտիոքոսն իսկապես մարտնչել է[5] Արտաքսիասի դեմ, բայց և (հայտնի է), որ վերջինս պահպանեց իր նախկին իշխանությունը[6]:*

## Գիրք VI

*Եվ ահա այս տեղում[7] Պորփյուրը այսօրինակ անիմանալի բաներ է զառանցում Անտիոքոսի մասին. մաքառելով, – ասում է,– եգիպտացիների դեմ և կտրելով անցնելով Լիբիան և Եթովպիան, կլսի, որ իրեն հյուսիսից և արևելքից մարտերի են հորդորում, և դառնալով այն-*

*տեղից կնվաճի ընդդիմացող արադցիներին[8] և կավերի Փյունիկիայի ծովափի ամբողջ նահանգը: Եվ անմիջապես կշարունակի արշավանքը Հայաստանի թագավոր Արտաքսիասի դեմ, որը չարժված կլինի արևելյան կողմերից և, կոտորելով նրա մարդկանցից շատերին, կհաստատի իր վրանը Ապեդնոն[9] կոչված վայրում, որը գտնվում է երկու լայնահուն գետերի՝ Տիգրիսի և Եփրատի միջև:*

*1. Հիերոնիմոսը նկատի ունի Աստվածաշնչի Դանիելի գրքի Է, 8-րդ հատվածի Պորփյուրի մեկնությունը, որը նա մերժում է և քննադատում:*

*2. Խոսքը Սելևկյան Անտիոքոս IV Եպիփանես թագավորի (175-164) մասին է:*

*3. Այստեղ Հիերոնիմոսը շփոթել է. Եգիպտոսի Պտղոմեոս VI թագավորի (180-145) մականունը ոչ թե Փիլոպատոր էր, այլ Փիլոմետոր:*

*4. Այս դեպքում ևս Հիերոնիմոսը շփոթել է. Պտղոմեոս VII (145-144) մականունը Նեոս Փիլիպատոր էր և ոչ թե Եվերգետես:*

*5. Հայ-սելևկյան սույն պատերազմը տեղի է ունեցել մոտավորապես Ք. ա. 165 թվականին:*

*6. Դիոդորոս Սիկիլիացին և Ապպիանոսը հայ-սելևկյան այս պատերազմի ելքը բնութագրում են որպես հայերի պարտություն: Սակայն Հիերոնիմոս - Պորփյուրի սույն տեղեկությունը ենթադրել է տալիս, որ իրականում Արտաշես I-ը ետ է մղել սելևկյան զորքերի հարձակումը:*

*7. Խոսքը Աստվածաշնչի «Մարգարէութիւն Դանիէլի» գրքի ԺԱ, 44-45 հատվածի Պորփյուրի մեկնության մասին է:*

*8. **Արադ** - քաղաք-պետություն Փյունիկիայում:*

*9. **Ապեդնոն** - քաղաք Հյուսիսային Միջագետքում: Այն հանգամանքը, որ պատերազմից հետո Անտիոքոս IV-ը իր վրանը (ճամբարը) խփում է Հայաստանից դուրս՝ Միջագետքում, ապացուցում է, որ սելևկյան բանակների արշավանքն անցել էր ապարդյուն և Հայաստանը պահպաննել էր իր ինքնուրույնությունը:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԶՈՐԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՐՏԱՇԵՍ I -Ի ԺԱՄԱՆԱԿ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԾԳ*

*Զորքի իշխանությունն էլ չորս մասի է բաժանում[1] (Արտաշեսը). արևելյան կողմի զորքը թողնում է Արտավազդին[2], արևմտյանը տալիս է Տիրանին[3], հարավայինը վստահում է Սմբատին, իսկ*

*հյուսիսայինը՝ Զարեհին: Զարեհը գոռոզ մարդ էր, երեների որսի մեջ խիզախ, բայց պատերազմների մեջ երկչոտ և դանդաղկոտ: Այս բանը փորձով գիտենալով, վրաց թագավորը՝ մի ոմն Քարձամ, ապստամբեցնում է այդ երկիրը և Զարեհին բռնելով բանտարկում է Կովկասում[4]: Բայց Արտավազդն ու Տիրանը Սմբատի հետ նրա դեմ պատերազմելով՝ իրենց եղբորը ետ են դարձնում, մեծ տղմից[5] հանելով:*

*1. Հայկական զորքը չորս զորավորությունների բաժանելու վերաբերյալ Խորենացու սույն վկայությունն, ըստ երևույթին, փոխարձագանքն է նույն չորս ուղղություններով հայկական զորքերի կատարած այն արշավանքների մասին, որոնք վկայված են Ստրաբոնի մոտ:*

*2. Արտավազդը Արտաշես I -ի ավագ որդին էր, որը հոր մահից հետո հռչակվեց Հայոց թագավոր (160–115):*

*3. Տիրանը Արտաշեսի որդիներից մեկն է, որն այլ աղբյուրներից հայտնի է Տիգրան ձևով: Հայոց Տիգրան I (115–95) թագավորն է (տե՛ս 351-րդ էջ, ծան. № 1):*

*4. Այս իրադարձության մանրամասն մի տարբերակ պահպանվել է նաև «Քարթլիս Ցխովրեբայում» (տե՛ս սույն հատորի 306-րդ էջը):*

*5. Բնագրում՝ «ի մեծէ կարկամէ», որ նշանակում է տիղմ, տղմոտ: Ստ. Մալխասյանցի կարծիքով, Խորենացին այսպես է կոչել Զարեհի կալանքի տեղը՝ խոնավ և տղմոտ լինելու պատճառով:*

## ԼԵՈՆՏԻ ՄՐՈՎԵԼԻՆ ԱՐՏԱՇԵՍ I -Ի ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### *ԼԵՈՆՏԻ ՄՐՈՎԵԼԻ*

### *ՎՐԱՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԵՎ ՆԱԽԱՀԱՅՐԵՐԻ ՈՒ ՏՈՀՄԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

*(Արշակունիանները), էջ 44–50*

### ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ԹԱԳԱՎՈՐՆԵՐ[1] ՓԱՐՍՄԱՆ ԵՎ ԿԱՈՍ ԱՐՇԱԿՈՒՆԻԱՆՆԵՐԸ[2], ԲԱՐՏՈՄԻ ԵՎ ՔԱՐԹԱՄԻ ՈՐԴԻՆԵՐԸ

*Իսկ Աղերկիից[3] մինչև սրանց թագավորելը սոմեխների (հայերի) թագավորների հպատակության ներքո էին (քարթվելները): Եվ առավելապես արմազեցի[4] թագավորներն օգնում էին սոմեխներին նրանց բոլոր թշնամիների դեմ: Այնժամ Սոմխիթում (Հայաստանում)*

*թագավոր դարձավ այն մեծ արքա Երվանդը[5]: Եվ նա մոռացավ քարթվելների բարեգործությունները, բռնացավ Փարսման Արմազեցու վրա և վերցրեց (գրավեց) Քարթլիի սահմաններից Ծունդա քաղաքը[6] և Արտանին[7] մինչև Մտկվարի գետը: Եվ բնակեցրեց Ծունդայում դևերին ազգակից, գազանաբարո մարդկանց, և Ծունդան կոչեց Քաջատուն անվամբ, որը թարգմանվում է Դևերի տուն[8]: Եվ Քարթլիի թագավորները չկարողացան ետ վերցնել (նշված) սահմանը, և մահացան մեծ տրտմության մեջ Փարսամը և Կաոսը:*

*Եվ նրանցից հետո թագավոր նստեցին նրանց որդիները, Արմազում՝ Արզոկը և Շիդա Քարթլիում՝ Արմազելը:*

### ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ԹԱԳԱՎՈՐՆԵՐ ԱՐԶՈԿ ԵՎ ԱՐՄԱԶԵԼ ԱՐՇԱԿՈՒՆԻԱՆՆԵՐԸ՝ ՓԱՐՍԱՄԻ ԵՎ ԿԱՈՍԻ ՈՐԴԻՆԵՐԸ

*Իսկ այս Արմազել և Արզոկ թագավորները քաջ և հաղթող մարդիկ էին: Եվ սրանք պայմանավորվեցին և որոշեցին Քարթլիի սահմանները (ետ) գրավել: Այն ժամանակ Սումբատ Բիվրատիանը[9] սպանեց Երվանդին՝ սոմեխների թագավորին, և թագավոր հաստատեց Երվանդի եղբորը, որին անվամբ կոչում էին Արտաշան[10]: Այնժամ Քարթլիի այս Արզոկ և Արմազել թագավորները դիմեցին օսերին (օվսերին)[11] և լեկերին (լեզգիներին) և բերեցին օսերի թագավորներին, երկու դյուցազն եղբայրներին՝ Բազուկ և Անբազուկ անվամբ, օսերի զորքով հանդերձ: Եվ նրանք իրենց հետ բերեցին պաճանիկներին և ջիքերին[12]: Եկավ լեկերի թագավորը և բերեց դուրձակներին[13] ու դիդոներին[14]: Եվ այս թագավորները Քարթլիի ժողովեցին իրենց զորքը, և ժողովվեց այս ամենով անթիվ բազմություն: Եվ հաջողությամբ ծածուկ հավաքվեցին, մինչև որ սոմեխների զորքը կժողովվեր: Եվ սրանք ներխուժեցին Սոմխիթ և անսպասելիորեն ասպատակեցին Շիրակուանը[15] և Վանանդը մինչև Բագրևանդ ու Բասիան[16], և ետ դարձան և ավարառության ենթարկեցին դաշտը[17] մինչև Նախճավան, և վերցրին գերի ու ավար անթիվ, և ամենայն հարստությամբ առլեցուն դարձան անցան Փառիսոսի ճանապարհով:*

*Այնժամ Սումբատ Բիվրատիանը կանչեց Սոմխիթի զորքին, շտապ հավաքվեցին սոմեխները և սկսեցին հետապնդել: Իսկ այս բոլոր հյուսիսականները անցել էին Մտկվարին և հասել էին Կամբեջոան, և ճամբար էին դրել Իորի (գետի) ափին[18] ու բաժանում էին գերիներին ու ավարը: Այդ ժամանակ Սումբատը ուղարկեց պատվիրակ և հայտարարեց. «Ինչ որ Սոմխիթից ավար, անասուն, ոսկի, արծաթ և*

*գործվածքեղեն եք վերցրել, (այդ) ամենը ձեզ եմ ընծայում, և որքան էլ սոմեխների արյուն եք հեղել, դրա համար էլ վրեժխնդիր չենք լինի, սակայն այն մարդկանց, որ այժմ գերի են ձեզ մոտ, արձակեցեք, և խաղաղությամբ գնացեք, հարստացած ու ամենայն (բարիքով) առլեցուն»: Իսկ նրանք այսպիսի պատասխան տվեցին. «Սոմխեթ ենք մտել ոչ թե ուրիշ պատճառներով, այլ քեզ գտնելու համար, բայց չգտանք քեզ: Եվ արդ եկել ես մեզ մոտ, ընդունիր քո բաժինը, ապա թե ոչ կգանք քեզ վրա, ուր էլ լինես մեր ձեռքից ողջ չես ազատվի»:*

*Այնժամ Սումբատ Բիվրատիանը անցավ Մտկվարին: Եվ օսերի թագավոր Բազուկը խնդրեց նրան իր հետ մենամարտել, ուղարկեց պատվիրակ և առաջարկեց իր հետ անձամբ կռվել: Իսկ Սումբատը զինվեց և հեծավ իր նժույգը ու անցավ կռվողների միջով: Եվ այնտեղից էլ դուրս եկավ Բազուկը: Ձայն տվին միմյանց և հարձակվեցին (իրար վրա): Եվ Սումբատը նիզակով հարվածեց նրա գոտուն ու դուրս եկավ (նիզակը) թիկունքից մեկ կանգուն, վերցրեց ձիու վրայից և գետին տապալեց: Այնժամ հարձակվեց Անբազուկը՝ իր եղբորն օգնելու միտումով, սակայն Սումբատը դուրս քաշեց այն նիզակը, ընդառաջ գնաց նրան և նույնպես հարվածեց ու դուրս հանեց (թիկունքից), վերցրեց և գետին տապալեց, ասելով. «Այս էլ սոմեխների կանանց ու տղամարդկանց, տղաների, մանուկների համար, որոնց դուք կոտորեցիք»: Այնժամ նրանց՝ օսերի, լեկերի և քարթվելների, ու բոլոր նրանց հյուսիսային ցեղերի զորքերը միաբերան բացականչեցին ու ասացին. «Քանզի սպանվեցին այս երկու եղբայրները, բոլոր դյուցազունների գլխավորները, ապա մեր մահը ամենևին էլ ամոթաբեր չի լինի»:*

*Եվ առավել կատաղեցին, բոլորը գումարվելով Արգոկի և Արմազելի՝ Քարթլիի թագավորների սպասալարության[19] ներքո, բոլորը հարձակվեցին Սումբատի և սոմեխների զորքի վրա: Այնժամ տեղի ունեցավ մեծ ճակատամարտ նրանց միջև և երկարեց նրանց միջև մարտը ժամը երեքից մինչև ինը: Եվ երկուստեք անթիվ կոտորվեցին, և փոշին բարձրացավ, ու օրը մթնեց հանց գիշեր: Եվ իրար խառնվեցին միանգամայն և փոշու պատճառով իրար չէին ճանաչում:*

*Այնժամ պարտվեց հյուսիսականների բանակը սոմեխներից, բոլորը փախուստի դիմեցին և ցիրուցան եղան, հարձակման անցավ Սումբատը, որը բազում ի բազմից վիրավորվել էր, և հետապնդեց մինչև գիշեր: Եվ կոտորեց բոլոր օսերին և լեկերին, որոնցից քչերը փրկվեցին, իսկ քարթվելները ավելի շատ փրկվեցին փախուստի ճանապարհները գիտենալու շնորհիվ: Եվ պատսպարվեցին Քարթլիի երկու վիրավոր թագավորներն էլ Մցխեթայում[20]:*

*Այնժամ Սումբատը հաղթանակած մուտք գործեց Քարթլի, և ավերեց Քարթլին՝ այն ամենը, ինչ գտավ բերդերից և քաղաքներից դուրս, իսկ բերդ-քաղաքների դեմ չէր մարտնչում, քանզի չտապ (արշավանքի) ելնելու պատճառով պատրաստ չէր (դրան)։ Այլև չինեց բերդ Օձրխեվի երկրում, որը կոչվում է Սամցխե[21], այն Դեմոթի կոչվող վայրում։ Ղադո լեռան[22] կպած։ Եվ գետեղելով դրա մեջ զորք՝ ծունդացիներին օգնելու համար, (ինքը) գնաց օձրխեվցիների դեմ մարտնչելու։*

*Իսկ Քարթլիի այս թագավորները՝ Արզոկը և Արմազելը, նրանց սրտի դաժանությունից չերկնչեցին, այլ ամրապնդեցին իրենց բերդերը և քաղաքները, Քարթլիի բոլոր դաշտավայրերը զիջեցին, բայց չդադարեցին սոմեխների դեմ ասպատակություններ ձեռնարկելուց։*

*Եվ սկսեցին օսերն իրենց արյան վրեժն առնել սոմեխներից, եկան Քարթլի և բարեկամացան քարթվելների հետ, ի մի գումարվեցին օսերը և քարթվելները, և մշտապես կռվում էին սոմեխների դեմ։ Եվ Օձրխեվ քաղաքում կար Արմազել թագավորի էրիսթավ՝ ազնվականներից[23], և նա հավատով հավատարիմ էր մնացել Արմազելին, և նրան օգնում էին մեգրելները։ Իսկ ծունդացիները և դեմոթեցիները օգնում էին միմյանց, և անդադար մարտնչում էին։ Եվ գլխավոր ճակատամարտը եղավ այն գետի վրա, որին Նոստե[24] են կոչում։*

*Եվ Կլարջեթում[25] կար Արզոկ թագավորի էրիսթավ՝ ազնվականներից։ Եվ նա վնասում էր սոմեխների սահմանները, Պարխալի երկրում, որը Տաոն է[26], և այնտեղից ոչ ոք չէր մուտք գործում Կլարջեթ, քանզի անանցանելի և ամուր էր անտառներով և լեռներով, իսկ Կլարջեթի բնակիչներն էլ ուժեղ և ռազմիկ մարդիկ էին։*

*Իսկ իրենք՝ Քարթլիի թագավորները, ասպատակում էին Սոմխիթը Աբոցի[27] ճանապարհով, և այսպես քարթվելները մշտապես ավարառություն էին կատարում։ Այնժամ շարժվեց իր ողջ զորությամբ սոմեխների արքան, և նրա սպարապետ Սումբատ Բիվրատիանը։ Իսկ քարթվելները ամրացրին բերդերը և քաղաքները, և զորք բերեցին Օվսեթից ու լցրին բերդերը և քաղաքները։ Եվ եկան սոմեխները ու կանգ առն Մցխեթայում, և պատերազմեցին հինգ ամիս։ Եվ ամեն օր դյուցազների գոտեմարտ էր տեղի ունենում։ Այնժամ նեղն ընկան քարթվելները և օսերը, ու հաշտություն խնդրեցին, խոստանալով հպատակվել և արյան ու սահմանների համար վրեժխնդիր չլինել։ Այնժամ ունկնդրեց սոմեխների արքան նրանց աղերսանքին։ Եվ ուխտ ու պայման դրվեց, և ստրկացնելով քարթվելներին ու օսերին, սոմեխների արքան գնաց։*

*Իսկ այս ընթացքում անցան մի քանի տարիներ, և վերաշինվեց սոմեխներից Քարթլին: Այնժամ սոմեխները զբաղված էին, քանզի պատերազմ էին սկսել պարսիկների և հույների դեմ[28]: Եվ այդ ընթացքում քարթվելները և օսերը ժամանակը բարեպատեհ համարեցին ու սկսեցին նեղել սոմեխներին, քանզի սոմեխների ամբողջ զորքը և երկու արքայորդիներն ու Սումբատը գտնվում էին պարսիկների դեմ (մղվող) պատերազմում: Եվ երբ քարթվելները և օսերը սկսեցին շատ վնասել սոմեխներին, այնժամ Արտաշան արքան զորք ժողովեց, որ մնացել էին տանը և տվեց իր որդի Զարենին[29] ու հղեց քարթվելների դեմ:*

*Իսկ քարթվելները և օսերը ժողովվեցին ու դիմեցին դեպի Ջավախեթի երկիրը: Եվ մարտնչեցին ու հաղթեցին քարթվելները և օսերը, փախուստի մատնեցին Զարենին՝ սոմեխների արքայի որդուն, կոտորեցին նրա ողջ զորքը և հետապնդեցին նրանց մինչև Սոմխիթի սահմանները, հասան Զարենին՝ արքայի որդուն, բռնեցին նրան այն լճի ափին, որին Ցելի[30] են կոչում և ետ տարան:*

*Իսկ օսերը կամենում էին սպանել այդ Զարենին՝ իրենց թագավորների արյան դիմաց, սակայն քարթվելները պահպանեցին նրա կյանքը, որպեսզի իրենց սահմանները ետ վերցնեն, և կալանավորեցին Դարիալանի բերդում[31]: Չկարողացան նրան գտնել սոմեխները, քանզի զբաղված էին պարսիկներով:*

*Այնժամ երրորդ տարում եկավ Սումբատ Բիվրատիանը և արքայի երկու որդիները՝ Արտավազը[32] և Տիգրանը[33], սոմեխների ողջ զորքով հանդերձ: Այդ ժամանակ Քարթլիի թագավորները հրամայեցին իրենց երկրին պատսպարվել բերդում և քաղաքներում, իսկ մթեուլները[34] ամրացրին բերդերն ու քաղաքները: Իսկ սոմեխները եկան ու կանգ առան Թրիալեթում[35]: Հանդես եկան նրանց միջև պատվիրակներ և հաշտվեցին. տվեցին քարթվելները, վերադարձրին արքայի կալանավորված որդուն, խոստանալով այսպիսի օգնություն. «Եթե որևէ թշնամի հանդես գա ձեր դեմ և պատերազմի ձեզ հետ այն կողմերում, մենք՝ երկու թագավորներս էլ անձամբ մեր զորքով կլինենք ձեր կողմից ու կօգնենք, իսկ եթե այդ կողմերում որևէ մեկի հետ պատերազմեք, հազար-հազարական սպառազինված ռազմիկներով ձեզ կօգնենք»: Եվ այս էլ խոստացան քարթվելները, որ «այս մեր քաղաքում դրամն Արտաշան արքայի պատկերով կհատենք»[36]:*

*Իսկ այս պատճառով սոմեխները վերադարձրին Քարթլիի սահմանները՝ Ծունդա քաղաքը և Դեմոթի բերդը, Ջավախքը և Արտանին[37]: Եվ այսուհետև եղան բարեկամ սոմեխները և քարթվելները ու*

օսերը։ Եվ երեքն էլ միասնաբար էին կռվում թշնամիների դեմ։

Եվ մեծապես գոհունակությամբ լցվեցին Արզոկն ու Արմազելը՝ մխիթարողները, քանզի նրանց քաջությամբ ետ վերադարձվեցին Քարթլիի սահմանները։

Եվ նրանցից հետո թագավորեցին նրանց որդիները. Արմազում՝ Ամազասպը[38], իսկ Քարթլիի ներսում՝ Դերոկը[39]։

1. «Քարթլիս Ցխովրեբայի» արքայացանկերը լի են մեծ խառնաշփոթություններով ու անճշտություններով։ Ք. ա. IV–I դդ. համար այնտեղ նշված թագավորների մեծագույն մասը կիսառասպելական կամ մտացածին անձնավորություններ են, ուստի անհնարին է ճշգրտել նրանց գոնե մոտավոր ժամանակագրությունը։

2. Վրացական թագավորության սկզբնավորության շրջանը (Ք. ա. III դար) կապվում է Փառնավազյան հարստության անվան հետ։ Սրանք հաճախ խնամիական կապեր էին հաստատում հայկական թագավորական տների, մասնավորապես Արտաշեսյանների հետ, իսկ չորրորդ թագավոր Փառնջոմ Փառնավազյանի սպանությունից հետո, ըստ վրացական ավանդական պատմության, Քարթլիի գահին է բազմում Հայոց Արշակ թագավորի (գուցե Արտաշե՞ս) Արշակ անվանյալ որդին, որից էլ սերում են վրաց Արշակունիանները։ Հատկանշական է, որ հետևելով հայկական ավանդական պատմությունը, որը չգիտե Արտաշեսյաններին և նրանց փոխարեն մատնանշում է միայն Արշակունիներին՝ «Քարթլիս Ցխովրեբան» ևս Արտաշեսյան հարստությունն անվանում է «Արշակունիան»։

3. Ըստ Քարթլիս Ցխովրեբայի, այս Ադերկին պապն էր Փարսամ և Կաոս Արշակունիանների։ Այժմ վրացագիտության մեջ ընդունված է այն տեսակետը, որ Ադերկիից սկսած վրացական գահին բազմել են մոր կողմից հայկական Երվանդունի-Արտաշեսյան տոհմից սերված թագավորներ։

4. **Արմազի** (Արմազցիխե) – ամրոց և քաղաք Բեգինեթի լեռան վրա՝ Մցխեթ քաղաքի դիմաց։ Այս ժամանակաշրջանում վրացական թագավորությունը բաժանված էր երկու առանձին մասերի՝ մեկը Արմազի թագավորությունն էր՝ նույնանուն կենտրոնով, ուր նստում էին Փարսմանը, իսկ այնուհետև՝ Բարտուոմն ու վերջինիս որդի Արզոկը, իսկ մյուսը՝ Շիդա Քարթլիի (Ներքին Քարթլի) թագավորությունն էր՝ Մցխեթ կենտրոնով, ուր նստում էր Կաոսը, իսկ այնուհետև՝ Քարթամն ու նրա որդի Արմազելը։

5. Խոսքը Հայոց Երվանդունյաց հարստության թագավոր Երվանդ Վերջինի մասին է։

6. **Ծունդա** (Քալաքի Ծունդա, Քաջատուն) – Գուգարաց բդեշխության ութերորդ գավառ Ջավախքի (Ջավախեթի, այժմ՝ Ախալքալաքի շրջան) կենտրոնը՝

*ներկայիս Նաքալաքևի գյուղի տեղում:*

*7. **Արտանի** (Քալաքի Արտունիսա, Քաջաց քաղաք) - Հայկական Արտահանն է՝ Գուգարաց բդեշխության յոթերորդ գավառ Արտահանի կենտրոնը: 387 թվականից՝ Ջավախքն ու Արտահանը, ամբողջ Գուգարքի հետ, մտան Վրաստանի կազմի մեջ:*

*8. Մրովելին վրացերեն է ընկալել հայերեն «քաջ» բառը, որի թարգմանական նշանակությունը վրացերեն էլ մեկնաբանում է, քանի որ վրացերեն «քաջի» և «դև» բառերը հոմանիշներ են:*

*9. Ըստ հին հայ վիպական չարքի Արտաշեսի վեպի, Սմբատ Բյուրատյանը (Բագրատունի) Արտաշես I-ի դայակն էր, ապա նրա զորահրամանատարն ու թագադիրը:*

*10. Խոսքը Հայոց Արտաշես I թագավորի մասին է: Հետաքրքիր է այն, որ «Քարթլիս Ցխովրեբան» Արտաշեսին և Երվանդին ներկայացնում է որպես հարազատ եղբայրներ, մինչդեռ, ինչպես հայտնի է, Արտաշեսի վեպում Երվանդը միայն կիսով չափ (մոր գծով) էր Արշակունի, հետևաբար բացառվում է Արտաշեսի և Երվանդի եղբայրներ լինելու հանգամանքը: Մյուս կողմից էլ այս փաստը խոսում է Արտաշես I-ի այն ձգտման մասին, որի նպատակն էր իրեն և իր տոհմը ներկայացնելու օրինական և Երվանդունիների տան չարունակողներ, միտում, որն իր արտահայտությունը պետք է ստանար Արտաշեսի արամեատառ արձանագրություններում:*

*11. Այսինքն՝ ալաններին: Սրանք բնակվում էին Կուբան գետի ակունքների շրջանից մինչև Թերեք գետի միջև ընկած տարածքում:*

*12. Այսինքն՝ պեչենեգներին և կովկասյան լեռնականներին:*

*13. **Դուրձակներ** (Դուրձուկնի) - ցեղ, որը բնակվում էր Հյուսիսային Կովկա - սում՝ Ասսա գետի վերին հոսանքում, այժմյան ինգուշների նախնիները: Սրանց երկիրը կոչվում էր Դուրձուկեթի (Դուրձուկք):*

*14. **Դիդոներ** (Դիդոնի) - ցեղ, որ բնակվում էր Ավարական Կոյսու գետի ակունքների շրջանում, երկիրը կոչվում էր Դիդոեթի (Դիդոյք), այդ ժողովուրդը այժմ էլ գոյություն ունի:*

*15. Խոսքը Շիրակավանի մասին է:*

*16. Այսինքն՝ Բասեն, Այրարատյան աշխարհի առաջին գավառը, այժմ՝ Փասեն:*

*17. Խոսքը Արարատյան դաշտավայրի մասին է:*

*18. **Իորի** (Կամբեջ) - գետ Կամբեջան գավառում, այժմ՝ Իորա:*

*19. Այսինքն՝զորահրամանատարության:*

*20. **Մցխեթ** - Վրաստանի հնագույն մայրաքաղաքը, այժմ նույնանուն փոքրիկ քաղաք:*

*21. **Սամցխե** - գավառ. մեսխերի ցեղի բնակատեղին, այժմ Ախալցխայի շրջանը:*

*22. **Ղադո** – Աճարան-Մեսխական լեռներն են: Սրա շուրջը տարածված էր Մեծ Հայքի հյուսիսային կուսակալություններից մեկը՝ Գողերձականը, որն ընդգրկում էր Սամցխե և Աճարա գավառները: Ք. ա. 37 թ. սահմանային փոփոխությունների հետևանքով՝ Գողերձականը (Դեմոթի ամրոցով հանդերձ) անջատվեց Մեծ Հայքից և միացվեց վրացական թագավորությանը:*

*23. Այսինքն՝ ազնվականներից:*

*24. **Նոստե գետ** – այժմ՝ Աճարա-Ծղալի գետը:*

*25. **Կլարջեթ** – հայկական Կղարջքն է՝ Գուգարքի իններորդ գավառը, որը 387 թվականից մտավ Վրաստանի կազմի մեջ:*

*26. **Տաո** – հայկական Տայքն է, Մեծ Հայքի 14-րդ նահանգը, կոչվել է նաև Խորագույն Հայք:*

*27. **Աբոցի** – պատմական Հայաստանի Աշոցք գավառն է:*

*28. Այստեղ, ըստ երևույթին, հեղինակը նկատի ունի այն հանգամանքը, որ Արտաշեսն այդ ժամանակ արշավանքներ էր ձեռնարկել դեպի արևելք՝ Պարսկաստանի ու Մարաստանի և դեպի հարավ՝ Սելևկյանների դեմ:*

*29. **Զարեհ** – խոսքը Արտաշես I -ի Զարեհ անունով որդու մասին է:*

*30. **Ցեկի լիճ** (Ծովակ Հիւսիսոյ) – այժմ Չալդր լիճն է (1959 մ):*

*31. **Դարիալանի** (Դար ի Ալան) – Ալանաց դուռն է, այժմյան Դարիալի անցքը, որտեղով անցնում է Ռազմավիրական ճանապարհը:*

*32. **Արտավազ** – Արտաշես I -ի ավագ որդին է, հետագայում՝ Հայաստանի թագավոր Արտավազդ I (160–115):*

*33. **Տիգրան** – Արտաշեսի կրտսեր որդին է, նույնպես Հայաստանի թագավոր՝ Տիգրան I (115-95):*

*34. Այսինքն՝ լեռնականները:*

*35. **Թրիալեթի** – հայկական Թռեղքն է, Գուգարքի հինգերորդ գավառը, այժմ՝ Ծալկայի շրջանը: 387 թ. Թռեղքը մտել է Վրաստանի կազմի մեջ:*

*36. Ցայսօր Արտաշես I -ի անունով դրամներ չեն հայտնաբերվել, սակայն այս վկայությունը խոսում է արդեն այդպիսի դրամների գոյության օգտին:*

*37. Հեղինակը չփոթում է, քանզի Արտաշես I -ը Ջավախքը, Թռեղքը և Արտահանը վերամիավորելով մայր հայրենիքի հետ, դրանք երբեք էլ չէր կարող դարձյալ զիջել վրացիներին: Հիշյալ երկրամասերը Մեծ Հայքից անջատվեցին և Վրաստանի կազմի մեջ մտան միայն 387 թվականից հետո:*

*38. Այսինքն՝ Համազասպը:*

*39. Դերոկի փոխարեն այլուր նշվում է Միրդատը (Միհրդատ), ըստ երևույթին, Դերոկը և Միհրդատը նույն անձնավորությունն են:*

## ՀԱՅՈՑ ԱՐՏԱՎԱԶԴ I ԹԱԳԱՎՈՐԻ ՀԻՇԱՏԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՊՈՄՊԵՈՍ ՏՐՈԳՈՍԻ ՄՈՏ

*Պոմպեոս Տրոգոսը վաղ կայսրության դարաշրջանի Հռոմի ականավոր պատմագիրներից է: Նրա մասին կենսագրական տեղեկություններ համարյա չկան: Ծնվել է Ք. ա. I դարի կեսերին՝ Հարավային Պրովանսում և մահացել մոտավորապես Ք. հ. I դարի 20-ական թվականներին:*

*Տրոգոսի գրչին է պատկանում այսպես կոչված «Փիլիպպոսյան պատմություններ» խորագրով աշխատությունը, որը բաղկացած է եղել 44 գրքերից: Սակայն, դժբախտաբար, այդ գրքերից և ոչ մեկը չի պահպանվել, բացառությամբ առանձին հատվածների, գրքերի նախաբանների ու նրանց համառոտ բովանդակության, որոնք քաղվածքներով (էպիտոմա) մեզ է հասցրել Ք. հ. III դարի լատին մատենագիր Հուստինոսը: Տրոգոսի երկասիրությունն ընդգրկել է համաշխարհային պատմությունը՝ ասուրական լեգենդար թագավորներից մինչև Օգոստոս կայսեր ժամանակաշրջանը (Ք. ա. 20 թ.):*

*Այստեղ լայն ֆոնի վրա, ներկայացված է եղել Ասորեստանի, Հունաստանի, Պարսկաստանի, Մակեդոնիայի, Սելևկյան Ասորիքի, Հայաստանի, Հրեաստանի, Պերգամոնի և Արևելքի մյուս ժողովուրդների պատմությունը: Տրոգոսը այն եզակի պատմագիրներից է, որ ոչ միայն չի ջատագովում Հռոմի պատմությունը, այլև նրան շատ քիչ տեղ է հատկացրել իր երկասիրության մեջ, միայն մեկ գիրք: Տրոգոսը բացասական վերաբերմունք ունի Հռոմի նկատմամբ, նա խիստ քննադատության է ենթարկում վերջինիս արտաքին քաղաքականությունն ու նվաճողական պատերազմները: Հեղինակն այն միտքն է զարգացնում, որ համաշխարհային բոլոր կայսրությունները, որոնք ստեղծվել են բռնության և նվաճումների շնորհիվ, անխուսափելիորեն պետք է կործանվեն: Տրոգոսի երկասիրության չեչտված հակահռոմեական ուղղվածությունը շատ բաներով է որոշել նրա ճակատագիրը: Անտիկ պատմիչները խուսափում էին այն օգտագործելուց և անգամ հիշատակելուց: Արդեն V դարում «Փիլիպպոսյան պատմությունները» անդառնալիորեն կորած էին համարվում:*

*Պոմպեոս Տրոգոսից ստորև բերվող հատվածները բերվում են ըստ* «**Justini M. Juniani** Epitoma historiarum Philippicarum **Pompeii Trogi**, ex recens. **Fr. Ruehl**, Lipsiae. 1915» *հրատարակության: Առաջին և երկրորդ հատվածները տրվում են Հ. Հ. Մանանդյանի, իսկ երրորդը՝ Գ. Խ. Սարգսյանի թարգմանությամբ:*

## ՀՈՒՍՏԻՆՈՍ

## ՔԱՂՎԱԾՔՆԵՐ, XLII, 2



**Միհրդատ II**

3-6. Արտավանին[1] հաջորդեց նրա որդի Միհրդատը[2], որն իր գործերի համար կոչվեց Մեծ. ...Սա մեծ քաջությամբ վարեց հարևանների հետ բազմաթիվ պատերազմներ ու Պարթևական թագավորությանը միացրեց շատ ժողովուրդներ: Նույնպես և սկյութացիների հետ նա մի քանի անգամ հաջողությամբ պատերազմեց և վրեժխնդիր եղավ նախորդների վիրավորանքների համար: Վերջը կռվեց արմենների թագավոր Արտավազդի հետ[3]:

7-9. Չի կարելի լռությամբ անցնել այնպիսի մեծ թագավորության կողքից, ինչպիսին է Հայաստանը, քանի որ նրա սահմանները, Պարթևստանից հետո, իրենց ընդարձակությամբ գերազանցում են բոլոր մյուս թագավորությունների սահմանները, ընդ որում Հայաստանը Կապադովկիայից մինչև Կասպից ծովը մեկ միլիոն հարյուր տասնմեկ հազար քայլ տարածություն ունի, իսկ լայնքով նրա երկարությունն է յոթ հարյուր հազար քայլ[4]:

1. Խոսքը Պարթևստանի թագավոր Արտավան I -ի (128-123) մասին է:

2. Նկատի ունի Պարթևստանի թագավոր Միհրդատ II -ին (123-87):

3. Սա Հայոց Արտավազդ I թագավորն է, Արտաշես I-ի որդին ու հաջորդը, ավագ եղբայրը Հայոց Տիգրան I թագավորի:

Պատմագիտության մեջ կարծիք է հայտնվել (Ժ. Գ. Էլչիբեկյան), որ սույն հատվածում հիշատակված պարթևական արքա Միհրդատը իրականում Միհրդատ I -ն է (171-138) և, որ այդտեղ հիշատակված պատերազմը Հայոց

*Արտավազդի հետ, տեղի է ունեցել Ք. ա. 140 թ. մոտերքը: Կարծիքը հիմնված է Հուստինոսի կողմից Տրոգոսի բնագրի աղճատման ցուցադրման վրա:*

*4. Քայլը Հռոմեական կայսրությունում ընդունված երկարության միավոր էր, որը հավասար է 1,48 մետրի, 1000 քայլը հավասար էր 1 հռոմեական մղոնի, որը հավասար է մոտ 1478,7 մետրի: Ուրեմն, ըստ Տրոգոսի, Մեծ Հայքի երկարությունը արևմուտքից դեպի արևելք հավասար էր 1100 հռոմեական մղոնի, այսինքն՝ 1650 կմ: Լայնությունը, այսինքն՝ հարավից դեպի հյուսիս ձգվող տարածությունը, հավասար էր 700 մղոնի, այսինքն՝ 1050 կմ:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ Ք. Ա. II–I ԴԱՐԵՐՈՒՄ ԸՍՏ ՍՏՐԱԲՈՆԻ

### *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ, XI, 14*

*15. Հին զրույցն այս է. իսկ առավել նորը, սկսած պարսիկներից ի վեր մինչև մեր ժամանակը, պետք է գլխավոր գծերով պատմել: Արմենիային տիրել են պարսիկները և մակեդոնացիները, այնուհետև նրանք, ովքեր նվաճել էին Ասորիքը և Մեդիան[1]: Վերջին իշխողն էր յոթը պարսիկներից մեկի՝ Հյուդարնեսի[2] չառավիղ Օրոնտեսը[3]: Այնուհետև (երկիրը) բաժանվեց երկու մասի՝ հռոմեացիների դեմ պատերազմած Անտիոքոս Մեծի ստրատեգոսների՝ Արտաքսիասի և Զարիադրիսի[4] կողմից: Եվ իշխում էին սրանք թագավորի հանձնարարությամբ, իսկ նրա պարտությունից հետո[5] հարելով հռոմեացիներին՝ իշխեցին իրենք ինքնուրույն և թագավոր հայտարարվեցին: Արտաքսիասի չառավիղն էր Տիգրանը, որն ուներ այսպես կոչված բուն Հայաստանը. այն հարակից էր Մեդիային, Աղվաններին և Իբերներին, մինչև Կոլխիս ու Եվքսինյան Կապադովկիա. իսկ Զարիադրիսի (չառավիղն էր) Արտանես Սոփենացին, որն ուներ հարավային և, առավելապես, արևմտյան մասերը: Տիգրանը հաղթեց նրան և ինքը դարձավ այդ բոլոր երկրների տերը[6]: (Տիգրանը) փոփոխական բախտ է ունեցել, քանզի նա սկզբում պատանդ է եղել պարթևների մոտ, այնուհետև (պարթևները) որպես վարձ ստանալով 70 հովիտ Հայաստանից, նրան վերադարձնում են (գահը): Նա հզորանալով, թե՛ այդ վայրերը ետ վերցրեց և թե՛ նվաճեց նրանց երկիրը՝ Նինվեի և Արբելայի չուրջը: Նա հպատակեցրեց նաև Ատրոպատենեն և Գորդյուենեն և սրանց հետ նաև մնացյալ Միջագետքը. բացի այդ, անցնելով Եփրատը, նա ուժով նվաճեց Ասորիքը և Փյունիկեն: Նա այդքան հզորա -*

*նալով՝ Օլիբերիայի մոտ[7], նրա և Եփրատի վրա գտնվող Զեգմայի մոտ կառուցեց քաղաք, որն անվանեց Տիգրանակերտ, և իր ավերած 12 հելլենական քաղաքների մարդկանց այնտեղ հավաքելով, (բնակեցրեց)։ Միհրդատին հաղթած Լուկուլլոսը արշավելով հասավ և վերաբնակիչներին արձակեց յուրաքանչյուրին իր երկիրը, իսկ քաղաքը, որ դեռ կիսավարտ էր, հարձակմամբ կործանեց և փոքր գյուղ թողեց, իսկ իրեն (Տիգրանին – Ս. Կ.) դուրս քշեց Ասորիքից և Փյունիկեից։ Սրան հաջորդած Արտավազդը քանի դեռ հռոմեացիների բարեկամն էր, բարեհաջող վիճակ ուներ. բայց երբ դավաճանեց Անտոնիոսին՝ պարթևների դեմ սրա մղած պատերազմի ժամանակ[8], պատժի ենթարկվեց։ Անտոնիոսի կողմից տարվելով Ալեքսանդրիա, նա շղթայակապ ման ածվեց քաղաքի միջով, որոշ ժամանակ մնաց բանտում, իսկ հետո մահվան ենթարկվեց Ակտիոնի պատերազմի ժամանակ[9]։ Նրանից հետո շատերը թագավորեցին Կեսարի[10] և հռոմեացիների գերիշխանությամբ. այժմ էլ շարունակվում է նույն ձևով։*

*XI, 13*

*4. Արդ, Կադուսիների[11] հետևակը իր բազմությամբ քիչ էր պակաս Արիաների[12] (հետևակից). նրանք գերազանց նիզականետներ են, իսկ քարքարոտ վայրերում հեծյալ (կռվելու) փոխարեն, կռվում են հետիոտն։ Անտոնիոսի արշավանքը ձախողեց ոչ թե երկրի բնությունը, այլ նրա ճանապարհի ուղեցույց Հայոց թագավոր Արտավազդը, որին նա ստիպված էր խորհրդատու և պատերազմի ծրագրին հաղորդակից դարձնել, թեև նա իր դեմ դավադրում էր։ Թեև Անտոնիոսը նրան պատժեց, բայց շատ ուշ, երբ արդեն հռոմեացիների կրած շատ չարիքների պատճառ էր դարձել թե՛ այս (Արտավազդ) և թե՛ այն[13], որը Եփրատի վրա գտնվող Զեգմայից մինչև Ատրոպատենե ընկած ճանապարհը դարձրեց ութ հազար ասպարեզ[14], ուղիղ ճանապարհի ավելի քան կրկնակին, լեռների, անանց վայրերի և շրջապտույտների միջոցով։*

*1. Ստրաբոնի սույն հատվածի նորագույն մեկնաբանությունները ցույց են տալիս, որ մակեդոնացիների անվան տակ պետք է հասկանալ ոչ թե Ալեքսանդր Մակեդոնացուն, այլ Սելևկյաններին, քանզի Հայաստանը երբեք էլ չենթարկվեց Ալեքսանդրի իշխանությանը։*

*2. Հյուդարնեսը (Վիդարնա) այն յոթ երևելի պարսիկներից մեկն էր, որ Ք. ա. 522 թ. սեպտեմբերի 29-ին օգնեցին Դարեհ Վշտասպյանին սպանելու ինքնակոչ*

*Գաումատային (Բարդիյա), որից հետո Դարեհը հռչակվեց Պարսկաստանի թագավոր (522-486): Ըստ Ստրաբոնի, Դարեհի զինակից այս Հյուդարնեսից էլ սերվում էին Երվանդունիները:*

*3.* ***Օրոնտես*** *(Երվանդ IV Վերջին) - Երվանդունիների հարստության վերջին ներկայացուցիչը, Հայաստանի թագավոր:*

*4. Արտաշես և Զարեհը մինչ թագավոր հռչակվելը (Ք. ա. 189 թ.), Սելևկյան ստրատեգոսներ էին՝ առաջինը Մեծ Հայքում, իսկ մյուսը՝ Ծոփքում: Ստրատեգոսը օժտված էր քաղաքացիական, վարչական ու ռազմական իրավարություններով և հանդիսանում էր տվյալ երկրամասի կառավարիչը:*

*5. Խոսքը Անտիոքոս III Մեծի Ք. ա. 190 թ. Մագնեսիայի ճակատամարտում հռոմեացիներից կրած պարտության մասին է:*

*6. Տիգրան II-ը Ծոփք ներխուժեց Ք. ա. 94 թ. և առանց դժվարության գրավեց այն. Ծոփքի թագավոր Արտանես Զարեհյանը սպանվեց, իսկ երկիրն էլ միացվեց Մեծ Հայքին:*

*7.* ***Օլիբերիա*** *- ըստ երևույթին, ամրոց Տիգրիսի վերին հոսանքի ձախակողմյան վտակներից մեկի՝ Նիկեփորիոնի (ներկայիս Ֆարկին-սու) ափին: Հենց այստեղ էլ 80-ական թվականների վերջերին Տիգրան II-ը հիմնադրեց իր տերության նոր մայրաքաղաքը:*

*8. Խոսքը Ք. ա. 36 թ. դեպի Պարթևստան ձեռնարկած Անտոնիոսի անհաջող արշավանքի մասին է:*

*9. Ստրաբոնը նկատի ունի Անտոնիոսի և Օկտավիանոսի միջև Ք. ա. 31 թ. տեղի ունեցած Ակտիումի ճակատամարտը, որտեղ Անտոնիոսը պարտություն կրեց:*

*10. Նկատի ունի Հռոմի կայսր Օկտավիանոս Օգոստոս Կեսարին:*

*11.* ***Կադուսիներ*** *(կատիչներ) - ցեղախումբ, որը բնակվում էր Կասպից ծովի հարավային ափին:*

*12.* ***Արիաներ*** *- իրանական ցեղեր, որոնք բնակվում էին Պարսկաստանի կենտրոնական շրջաններում, ներկայիս Խորասանում:*

*13. Ստրաբոնն այստեղ նկատի ունի Մեդիա-Ատրոպատենեի թագավոր Մար Արտավազդին:*

*14.Ասպարեզը հավասար էր մոտ 190 մետրի:*

## ՊՈՄՊԵՈՍ ՏՐՈԳՈՍԸ Ք. Ա. 93 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՅ-ՊՈՆՏԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՄԱՍԻՆ

### *ՀՈՒՍՏԻՆՈՍ*

### *ՔԱՂՎԱԾՔՆԵՐ, XXXVIII, 3*

*1-5. Այդ ժամանակ[1] Արմենիայի թագավորն էր Տիգրանը, որը պատանդ էր տրվել վաղուց պարթևներին և քիչ առաջ հետ էր ուղարկվել իր հայրենի թագավորությունը[2]: Սրան շատ էր ուզում Միհրդատը[3] դաշնակից անել ընդդեմ հռոմեացիների, որոնց հետ նա վաղուց հետե մտադիր էր պատերազմ սկսել: Եվ թեև Տիգրանը հռոմեացիների կողմից չէր կրել որևէ անարգանք՝ նա դրդում էր նրան Գորդիոսի[4] միջոցով, որ հարձակվի Արիոբարզանի[5] վրա, որը խիստ թույլ էր: Իսկ որպեսզի չերևա, որ որոշ խորամանկություն կա դրա տակ՝ նա ամուսնացնում է նրա (Տիգրանի) հետ իր աղջկան՝ Կլեոպատրային: Տիգրանի հենց առաջին հարձակման ժամանակ[6] Արիոբարզանը վերցնում է իր գույքը[7] և փախչում է Հռոմ: Եվ այսպիսով, Տիգրանի օգնությամբ Կապադովկիայում սկիզբ է դրվում նորից Միհրդատի իշխանությանը: Նույն այս ժամանակ մեռնում է Նիկոմեդեսը[8], և նրա որդուն, որի անունը նույնպես Նիկոմեդես[9] էր, դուրս է վտարում թագավորությունից Միհրդատը: Երբ սա Հռոմ է գալիս որպես աղաչավոր՝ ծերակույտը վճռում է, որ երկուսն էլ պետք է վերահաստատվեն իրենց թագավորություններում: Այս գործի համար ուղարկվում են իբրև լեգատներ Մանիոս Ակվիլիոսը և Մանիլիոս Մալթինոսը: Երբ այս բանը իմացվում է՝ Միհրդատը դաշն է կնքում Տիգրանի հետ, որպեսզի պատերազմ սկսի հռոմեացիների դեմ: Նրանք պայմանավորվել էին իրար հետ, որ քաղաքները և հողերը պատկանելու են Միհրդատին, իսկ մարդիկ և ինչ որ հնարավոր է տանել՝ Տիգրանին:*

*1. Այսինքն՝ Ք. ա. 93 թվականին:*

*2. Տիգրան II-ը պարթևական պատանդությունից ազատվեց և գահ բարձրացավ Ք. ա. 95 թվականին, երբ արդեն 45 տարեկան էր:*

*3. Խոսքը Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորի մասին է:*

*4. Գորդիոսը Միհրդատ Եվպատորի խորհրդականներից էր, վերջինիս մանկահասակ որդու՝ Արիարաթեսի խնամակալը:*

*5. Սա Կապադովկիայի թագավոր Արիոբարզան I Հռոմեասերն էր (95-62):*

*6. Տիգրանի առաջին հարձակումը Կապադովկիայի վրա տեղի է ունեցել Ք. ա. 93 թվականին:*



*Արքայից – արքա Տիգրան II Մեծ*

7. Ըստ երևույթին, այստեղ խոսքը թագավորական գանձերի մասին է:

8. Խոսքը վերաբերում է Բյութանիայի թագավոր Նիկոմեդես III Եվերգետեսին (127-94):

9. Սա Բյութանիայի թագավոր Նիկոմեդես IV Փիլոպատորն էր (94-74):

## ՏԻԳՐԱՆ ՄԵԾԸ ՍԵԼԵՎԿՅԱՆ ԱՍՈՐԻՔԻ ԹԱԳԱՎՈՐ ԸՍՏ ՊՈՄՊԵՈՍ ՏՐՈԳՈՍԻ

### *ՀՈՒՍՏԻՆՈՍ*

### *ՔԱՂՎԱԾՔՆԵՐ, XL, 1*

*1-4. Եղբայրների[1] փոխադարձ ատելությունը, ապա և նրանց որդիներին[2] ժառանգաբար անցած թշնամությունը, անընդհատ պատերազմներ ծնեցին, որոնք ծայրահեղ թուլության հասցրին Ասորիքը[3] ու նրա թագավորներին: Ի վերջո ժողովուրդը դիմեց օտարի օգնությանը և սկսեց փնտրել օտարերկրացի թագավոր: Ոմանք կարծում էին, որ պետք է հրավիրել Միհրդատ Պոնտացուն[4], մյուսները՝ Եգիպտոսի Պտղոմեոսին[5]: Սակայն իրերի բերմամբ Միհրդատը պատերազմների մեջ էր հռոմեացիների դեմ[6], իսկ Պտղոմեոսը Ասորիքի մշտական թշնամին էր եղել: Այսպիսով, բոլորը համաձայնության եկան Հայաստանի թագավոր Տիգրանի շուրջը, որը սեփական ռազմական ուժ ունենալուց բացի, պարթևների թագավորության դաշնակիցն էր ու Միհրդատի[7] խնամին: Եվ այսպես, հրավիրված լինելով Ասորիքի գահին բազմելու[8], նա 17 տարի չարունակ[9] կառավարում էր ամենայն անդորրությամբ, չէր խանգարում պատերազմներով ուրիշների հանգիստը և ոչ ոք նրան չէր անհանգստացնում, այնպես որ պատերազմելու անհրաժեշտություն չկար:*

1. Սելևկյան տերության թագավոր Դեմետրիոս II -ի մահից հետո (125 թ.), նրա որդիների՝ Անտիոքոս VIII Գրյուպոսի (125-96) և Անտիոքոս IX Կիզիկացու (114-95) միջև սկսվեց պայքար գահի համար:

2. Անտիոքոս VIII-ի որդիների՝ Դեմետրիոս III-ի (96-88) և Սելևկոս VI-ի (96-95), ինչպես նաև Անտիոքոս IX Կիզիկացու որդիների՝ Անտիոքոս X Եվսեբեսի (95-92), Անտիոքոս XI-ի (93), Փիլիպպոս I -ի (93-84) և Անտիոքոս XII Փիլադելփոսի (87-84) միջև երկարամյա քաղաքացիական պատերազմ բորբոքվեց իշխանության համար, որը չարունակվեց ընդհուպ մինչև 84 թվականը:

3. Այսինքն՝ Սելևկյան տերությունը:

4. Խոսքը Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորի մասին է:

*5. **Պտղոմեոս** – խոսքը վերաբերում է Եգիպտոսի Պտղոմեոս IX Լաթյուրոս թագավորին (ընդմիջումներով՝ 116–81):*

*6. Այստեղ, ըստ երևույթին, խոսքը Միհրդատյան առաջին պատերազմի մասին է (88–84):*

*7. Ամենայն հավանականությամբ, Տրոգոսը նկատի ունի Պարթևստանի թագավոր Միհրդատ II-ին, որը ամուսնացել է Տիգրան II-ի դստեր՝ Արիազատեի (Ավտոմա) հետ:*

*8. Այս վկայությունից չպետք է եզրակացնել, որ Սելևկյանների տերության նվաճումը Տիգրանի կողմից խիստ դյուրին է եղել. մյուս աղբյուրները (Ապպիանոս, Պլուտարքոս, Ստրաբոն և այլք), ընդհակառակը, նշում են, որ Տիգրանը Ասորիքը գրավել էր զենքի ուժով: Հ. Մանանդյանի կարծիքով, Ասորիքում գոյություն ունեցող կուսակցություններից մեկը եթե հրավիրել էր Տիգրանին, ապա մյուսները դիմադրություն էին ցույց տվել:*

*9. Տիգրան Մեծը Սելևկյանների գահին բազմեց 83 թվականին, ուստի նրա իշխանությունը Ասորիքում, ըստ Տրոգոս-Հուստինոսի, տևել է մինչև 66 թվականը, այսինքն՝ Պոմպեոսի հետ կնքած հաշտության պայմանագիրը:*

## ՈՒՇԲԱԲԵԼՈՆՅԱՆ ՍԵՊԱԳՐԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ ՏԻԳՐԱՆ ՄԵԾԻ ՄԱՍԻՆ

***Բրիտանական թանգարանում պահվում է Բաբելոն քաղաքից ծագող աստղաբաշխական մի սեպագրական օրագրի բեկոր, որի մեջ, այդ ժանրի վավերագրերի կազմման ավանդների համաձայն, առկա են նաև հատվածաբար պահպանված հակիրճ ժամանակագրական տեղեկություններ: Մեզ հետաքրքրող բնագրի մոտավոր բովանդակությունը հիշատակել են դեռևս Վ. Բեկքը (1899 թ.) և Ն. Ադոնցը (1940 թ.), սակայն վավերագրի ինքնագրի (սեպագական պատճենի) հետազոտությունը կատարել է Գագիկ Սարգսյանը («Պատմա-բանասիրական հանդես», 1991, № 2):***

***Ըստ բեկորում պահպանված աստղաբաշխական տվյալների, մասնագետները վավերագիրը թվագրում են սելևկյան տոմարի 230 թ. առաջին երկու ամիսներով (Ք. ա. 82 թ. ապրիլի 21 – հունիսի 17): Այս բացարձակ թվագրումը ստիպում է վերանայել Տիգրան II-ի դարաշրջանին վերաբերող՝ Ապպիանոսի մի հաղորդման վրա կառուցված, գիտության մեջ արմատացած որոշ ժամանակագրական և փաստական պատկերացումներ: Այսպես, ըստ վավերագրի Ք. ա. 82 թ. արշավանքի ելած Տիգրան Կրտսերը, Տիգրան II-ի որդին, մանավանդ նրա երկու ավագ եղբայրները, հակառակ Ապպիանոսի հաղորդման, չէին կարող Միհրդատ Եվպատորի դուստր, Տիգրան II-ի***

Հետո Ք. ա. 94 թ. ամուսնացած Կլեոպատրայի որդիները լինել: Նրանք ծնվել են դրանից առաջ, երեքն էլ, հավանաբար, Տիգրան II-ի՝ Պարթևստանում պատանդ եղած ժամանակ: Այս փաստը կարող է նաև այլ եզրակացությունների հիմք դառնալ:

Բնագրի պահպանված հատվածը կազմված է ոչ լրիվ 18 տողերից, որոնցից 1–6-ում և 12–18-ում աստղագիտական բնույթի հաղորդումներ են, իսկ համառոտ պատմական տեղեկանք են պարունակում 10–11-րդ տողերը, որոնց թարգմանությունն ու մեկնաբանությունները կատարել է Գագիկ Սարգսյանը (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1991, № 2; վերահրատարակությունը՝ Գ. Խ. Սարգսյան, Պատմագիտական հետազոտություններ, Երևան, 2006, էջ 191–201):

10. քաղաքը Սելևկիա՝ Տիգրիսի վրա [...]
11. Տիգրանը՝ Արմինիի[1] թագավորի որդին, դեպի (քաղաք) [...] արշավանք կատարեց...

1. «Արմինի» (Արմինա) տարբերակով Հայաստանը հիշատակվում է Աքեմենյան տերության պարսկալեզու արձանագրություններում: Տերության բաբելերեն արձանագրություններում Արմինիի համարժեք է հանդես գալիս Ուրարտուն (Ուրաշտու):

## ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍԸ ՏԻԳՐԱՆ ՄԵԾԻ ԿՈՂՄԻՑ ՍԵԼԵՎԿՅԱՆ ԱՍՈՐԻՔԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

Հովսեպոս Փլավիոսը (Հովսեպոս Եբրայեցի, Հովսեփ բեն Մատաֆիա) վաղ կայսրության ժամանակաշրջանի հռոմեական պատմագրության ականավոր ներկայացուցիչներից մեկն է: Նա ծնվել է Ք. հ. 37 թ. Երուսաղեմում՝ հրեա քահանայապետի ընտանիքում: Նշանակալից դեր է խաղացել հռոմեական տիրապետության դեմ բռնկված հրեաների ապստամբության, կամ այսպես կոչված Հրեական պատերազմի (66–73) սկզբնական իրադարձությունների ժամանակ: Գլխավորել է Գալիլեայի պաշտպանությունը: Իոտապատա ամրոցի անկումից հետո (67 թ.), նա գերվում է հռոմեացիների կողմից, սակայն, արժանանալով ապագա կայսր Վեսպասիանոսի բարեհաճությանը՝ շուտով ազատվում է: Ի նշան երախտագիտության, Հովսեպոսը իր անվանն ավելացնում է Վեսպասիանոսի մականունը՝ Փլավիոս: Հետագայում Հովսեպոսին շնորհվում է հռոմեական քաղաքացու իրավունք. նրան թույլատրվում է բնակվել կայսերական արքու-

նիքում, ուր և անցել է նրա կյանքի մեծագույն մասը: Հովսեպոսը մահացել է մոտավորապես II դարի առաջին տասնամյակում:

Վայելելով Վեսպասիանոս և Տիտոս կայսրերի հովանավորությունը և ստանալով նրանց աջակցությունը՝ Հովսեպոսը Հռոմում ձեռնամուխ է լինում իր պատմագիտական ու կենսագրական բնույթի երկերի շարադրմանը: Դրանցից մեզ են հասել «Հրեական պատերազմի մասին», «Հրեական հնախոսություն», «Կյանքը» և «Ընդդեմ Ապիոնի» ստեղծագործությունները:

Մեծ են և անգնահատելի Հովսեպոսի վերը նշված երկերից առաջին երկուսի աղբյուրագիտական-պատմագիտական արժեքն ու նշանակությունը հին աշխարհի երկրների, այդ թվում և Հայաստանի պատմության ուսումնասիրության գործում: Դրանց հեղինակը ոչ միայն նկարագրվող դեպքերի մեծ մասի ժամանակակիցն է ու մասնակիցը, այլև օգտվել է ոչ հռոմեական հավաստի աղբյուրներից, որը նրան դարձնում էին հին աշխարհի բացառիկ արժանահավատ և անաչառ հեղինակներից մեկը:

Հովսեպոս Փլավիոսի երկերից ստորև բերված հատվածները վերցրել ենք «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի 9-րդ հատորում (Երևան, 1976) զետեղված նրա «Հրեական պատերազմի մասին» և «Հրեական հնախոսություն» երկերի հատվածաբար թարգմանություններից, որոնք կատարել է Ս. Մ. Կրկյաշարյանը:

## ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍ

## ՀՐԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### Գիրք առաջին

115 Իսկ Ալեքսանդրան[1] (Արիստոբուլոսի գլխավորությամբ)
զորք ուղարկեց Դամասկոս այն պատճառով, որ Պտղո-
մեոսը[2] անդադար ճնշում էր քաղաքը, սակայն զորքը վե-
116 րադարձավ իր մոտ, առանց որևէ նշանակալից բան անե-
լու: Մյուս կողմից՝ Հայոց թագավոր Տիգրանին[3], որը բա-
նակել էր Պտղոմայիս[4] քաղաքի առջև և պաշարել էր այն-
տեղ (փակված) Կլեոպատրային[5], դաշինքով ու նվերներով
հեռացրեց: Իսկ Տիգրանը Լուկուլլոսի արշավանքների հե-
տևանքով տանն սկսված անկարգությունների պատճառով՝
վերացնում է պաշարումը և հասնում Հայաստան:



***Ոսկե մեդալիոն Սիսիանից (Ք. ա. I դար)***

## ՀՐԵԱԿԱՆ ՀՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

## Գիրք տասներեքերորդ

419 *Այդ ժամանակ[6] էլ լուր է հասնում, թե Հայոց թագա-*
*վոր Տիգրանը երեսուն բյուր զորքով[7] ներխուժել է Սիրիա*
*և գալիս է Հրեաստանի դեմ: Այս, բնականաբար, ահա-*
*բեկեց Թագուհուն[8] և ժողովրդին: Ուստի նրանք բազում և*
*արժանավայել ընծաներ ուղարկեցին նրան և դեսպաններ,*
*երբ նա դեռևս պաշարում էր Պտղոմայիս քաղաքը: Որով-*
420 *հետև Սելենե Թագուհին, որը կոչվում էր նաև Կլեոպատրա,*
*այդ ժամանակ տիրում էր Սիրիային և հորդորել էր բնա-*

*կիչներին՝ ղռները փակել Տիգրանի առաջ: Ուստի դեսպան-
ները հանդիպելով նրան, խնդրում էին բարենպաստ պայ-
մաններ շնորհել թագուհուն և ժողովրդին: Իսկ նա, գնա-*
421 *հատելով այն, որ նրանք ժամանել են այդքան հեռու տա-
րածությունից, լավագույնս հուսադրեց: Բայց հազիվ էր
Պտղոմայիսը գրավվել[9], երբ լուր հասավ Տիգրանին, թե
Լուկուլլոսը, հետապնդելով Միհրդատին[10], չի կարողացել
նրան բռնել, քանի որ (վերջինս) փախել է իբերների եր-
կիրը, և (Լուկուլլոսը), ասպատակելով Հայաստանը, պա-
շարել է (մայրաքաղաքը)[11]: Տիգրանն այս մասին իմանա-
լով, վերադարձավ իր սեփական երկիրը:*

*1. Սա Հրեաստանի Ալեքսանդրա-Սոլոմեա թագուհին էր (76-67):*

*2. **Պտղոմեոս** - Կոյլե-Սիրիայի (Խորագույն Ասորիք) ոչ մեծ պետության թագավորն էր (85-40)՝ Տիգրան II-ի վասալը:*

*3. Խոսքը Տիգրան II Մեծի մասին է:*

*4. Քաղաք Միջերկրական ծովի ափին, Փյունիկիայի հարավում՝ Պաղեստինի սահմանամերձ շրջանում:*

*5. **Կլեոպատրա** (Կլեոպատրա-Սելենե) - Սելևկյան թագուհի՝ Եգիպտոսի Պտղոմեոս VIII Եվերգետես Փիսկոն թագավորի (170-116) դուստրը: Ամուսնացել է Սելևկյան մի քանի թագավորների (Անտիոքոս VIII Գրյուպոս, Անտիոքոս IX Կիզիկացի, Անտիոքոս X Եվսեբես) հետ, մայրը՝ Սելևկյան թագավոր Անտիոքոս XIII Ասիացու (68-64):*

*6. Տիգրան Մեծը Ասորիք-Սիրիան նվաճեց և նստեց Սելևկյանների գահին Ք. ա. 83 թվականին: Հայկական բանակները հասան մինչև Եգիպտոսին սահմանամերձ Պտղոմայիս քաղաքը և շրջապատեցին այն: Ըստ երևույթին, պաշարումը երկար տարիներ է տևել և այդ ընթացքում Հրեաստանի Ալեքսանդրա թագուհին դեսպաններ ուղարկելով Տիգրանի մոտ, փաստորեն ընդունել է նրա գերիշխանությունը:*

*7. Այսինքն՝ 300 հազար զորք: Հայկական ռազմական ուժերի քանակության մասին մոտավորապես նույն թիվն է հաղորդում նաև Պլուտարքոսը (տե՛ս Լուկուլլոս, XXVII): Ակնհայտ է, որ այս թվերը չափազանցված են. ուսմնասի - րողները գտնում են, որ Հայաստանն այդ ժամանակ կարող էր ունենալ 100-150 հազար զորք:*

*8. Խոսքը վերաբերում է Հրեաստանի Ալեքսանդրա թագուհուն:*

*9. Հայկական բանակը Պտղոմայիս քաղաքը գրավել է Ք. ա. 70 թվականին:*

*10. Այսինքն՝ Միհրդատ VI Եվպատորին:*

*11. Խոսքը Տիգրանակերտ մայրաքաղաքի մասին է:*

## ՊԼՈՒՏԱՐՔՈՍԸ Ք. Ա. 69–67 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### *ՊԼՈՒՏԱՐՔՈՍ*

### *ԶՈՒԳԱՀԵՌ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### ԼՈՒԿՈՒԼԼՈՍ

*14. ... Լուկուլլոսը չէր կարծում, որ այս ամենը զինվորներին կմղի այնպիսի անմտության, որին նրանք հանգեցին հետագայում, և նման խոսքերը մատնում էր անուշադրության և ականջի ետև գցում: Նա առաջին հերթին անհրաժեշտ էր համարում իր գործողություններն արդարացնել նրանց առաջ, ովքեր, ընդհակառակը, մեղադրում էին նրան դանդաղկոտության մեջ, որ նա, հապաղելով աննշան բնակավայրերի և քաղաքների մոտ, Միհրդատին[1] հնարավորություն է ընձեռում ուժեր հավաքելու: «Ինձ էլ այդ է պետք,– հակաճառեց նրանց նա,– ես դիտավորյալ եմ դանդաղում: Թող արքան նորից հզորանա և կռվի համար բավականաչափ զորք հավաքի, այնպես, որ մնա տեղում և մեր մոտենալուց չփախչի: Կամ դուք չե՞ք տեսնում, որ նրա թիկունքում անապատային անսահման տարածություններ են, իսկ կողքին Կովկասն է, լեռնային հսկայական մի երկրամաս խոր ձորերով, որտեղ կարող են ապաստան գտնել ու պաշտպանվել թշնամու հետ հանդիպելուց խուսափող նույնիսկ հազար արքաներ: Բացի այդ, Կաբիրայից[2] մինչև Հայաստան ընդամենը մի քանի օրվա ճանապարհ է, իսկ Հայաստանում թագավորում է Տիգրանը, արքայից արքան, որն իր զորքով փակում է պարթևների ճանապարհը դեպի Փոքր Ասիա, իսկ հունական քաղաքային համայնքները վերաբնակեցնում է Մեդիայում, այդ արքան նվաճել է Ասորիքն ու Պաղեստինը, իսկ Սելևկյան տոհմի թագավորին մահվան մատնել[3] ու գերության տարել նրա կանանց ու դուստրերին: Եվ նման մարդը Միհրդատի բարեկամն է, նրա փեսան: Եվ եթե Միհրդատը դիմի նրա պաշտպանությանը, ապա նա Միհրդատին չի թողնի փորձանքի մեջ և պատերազմ կսկսի մեր դեմ: Չլինի այնպես, որ շտապելով Միհրդատին դուրս քշել իր տիրույթներից, հանդիպենք Տիգրանին ու փորձանքի գանք: Քանզի նա արդեն վաղուց առիթ է փնտրում մեր դեմ պատերազմելու. իսկ նա առավել հարմար ի՞նչ առիթ կարող է գտնել, քան արքայական ազգակցին փորձանքի մեջ օգնելը: Ինչո՞ւ դրան ձգտենք. ինչո՞ւ սովորեցնենք Միհրդատին, թե ում օգնությանը դիմի մեր դեմ պայքա-*



*Միհրդատ VI Եվպատոր*

*րելիս։ Ինչո՞ւ նրան մղել Տիգրանի գիրկը, երբ ինքն այդ չի ուզում և այն համարում է անպատվություն։ Ավելի լավ չի՞ լինի, եթե նրան ժամանակ տանք հավաքելու իր սեփական ուժերը և նորից ոգևորվելու. այնժամ մեզ մնում է կռվել ոչ թե մարերի և հայերի, այլ կոլխերի, տիբարեններն և կապադովկիացիների դեմ, որոնց մենք բազմիցս հաղթել ենք»։*

*19. Այժմ նա շարժվեց առաջ և հասավ Տալավրա[4]։ Սակայն Միհրդատը դեռ չորս օր առաջ կարողացել էր փախչել Հայաստան, Տիգրանի մոտ[5] ուստիև Լուկուլլոսը ետ վերադարձավ։ Նա հպատակեցրեց խաղդայներին ու իբարեններին[6], նվաճեց Փոքր Հայքը[7] և շատ բերդերի ու քաղաքների ստիպեց հանձնվել։ Այնուհետև նա Ապպիոսին[8] Տիգրանի մոտ ուղարկեց, Միհրդատին հանձնելու պահանջով, իսկ ինքը ուղևորվեց դեպի Ամիսոս[9], որը դեռևս գրավված չէր։*

*21. Այդ ընթացքում Ապպիոս Կլավդիոսն ուղարկվեց Տիգրանի մոտ (այս Կլավդիոսը Լուկուլլոսի այդ ժամանակվա կնոջ եղբայրն էր)։ Սկզբում նրան առաջնորդում էին թագավորի ուղեցույցները, որոնք նրան տանում էին շրջանցիկ ճանապարհով, երկրի վերին կողմերի միջով, ստիպելով զուր տեղը շատ ժամանակ վատնել։ Բայց երբ ազատարձակ մի ասորի ցույց տվեց նրան ուղիղ ճանապարհը, Կլավդիոսը հրաժարվեց նախկին երկար և սոփեստության նման խճճված ճանապարհից, բաժանվեց ուղեցույց բարբարոսներից։ Մի քանի օրից նա անցավ Եփրատը և ժամանեց Անտիոք Եպիդափնե[10]։ Այստեղ նրան հրամայվեց սպասել Տիգրանին, որը բացակա էր, զբաղված լինելով փյունիկյան մի քանի քաղաքների նվաճմամբ[11]։ Այդ ընթացքում Կլավդիոսը կարողացավ իր կողմը գրավել մեծ թվով իշխանավորների, որոնք ներքուստ չէին կարող տանել հայոց արքայի ծանր իշխանությունը։ Նրանց թվում էր նաև Գորդիենեի թագավոր Զար-*

*բինոսը: Նվաճված քաղաքներից շատերը գաղտնաբար սուրհանդակներ էին ուղարկում Ապպիոսի մոտ, և նա խոստանում էր, որ Լուկուլլոսը կօգնի իրենց. բայց խորհուրդ էր տալիս առժամանակ ձեռնպահ մնալ վճռական գործողություններից: Հելլենների համար հայկական տիրապետությունը անտանելի լուծ էր, հատկապես այն պատճառով, որ իր անսովոր հաջողությունների հետևանքով արքան դարձել էր հանդուգն ու մեծամիտ: Նրան թվում էր, որ այն ամենը, ինչը հասարակ մարդկանց նախանձն ու հիացմունքն է շարժում, ոչ միայն գտնվում է իր իշխանության տակ, այլ մտածված կերպով ստեղծված է իր համար: Առաջին քայլերն անելիս Տիգրանի հնարավորությունները ծրագրերը խիստ չնչին էին, իսկ այժմ նա նվաճել էր բազում ժողովուրդների, ինչպես ուրիշ ոչ ոք կարողացել կոտրել պարթևների հզորությունը և Միջագետքը լցրել հելլեններով, որոնց մեծ թվով բռնագաղթեցրել էր այնտեղ Կիլիկիայից ու Կապադովկիայից[12]: Այլ ժողովուրդների թվում իրենց նախկին բնակավայրերից նա քշել էր նաև արաբական ցեղերին, որոնց բնակեցրել էր իր մայրաքաղաքի մերձակայքում, որպեսզի նրանց օգտագործեր առևտրական կարիքների համար[13]: Նրա մոտ շատ թագավորներ կային սպասավորի դրությամբ, իսկ նրանցից չորսին նա մշտապես պահում էր իր մոտ, որպես ուղեկից կամ թիկնապահ. երբ նա գնում էր ձիով, նրանք, կարճ խիտոններ հագած, վազում էին նրա կողքից, իսկ երբ նստած էր լինում և զբաղվում պաշտոնական գործերով, նրանք կանգնում էին նրա շուրջը, ձեռքները կրծքներին: Համարվում էր, որ այդ դիրքը լավագույնս էր արտահայտում իրենց ստրկական կախվածության լիակատար ընդունումը: Այն ընդունողը կարծես թե իր մարմնի հետ տիրոջ տրամադրությանն էր հանձնում նաև իր ազատությունը և պատրաստակամություն հայտնում ամեն ինչ տանել, հանդուրժել առանց առարկության: Սակայն Ապպիոսը, բոլորովին չշփոթվելով և չվախենալով շքեղ տեսարանից, սկզբից ևեթ ուղղակի հայտարարեց, որ եկել է կամ Միհրդատին ստանալու, որը հարկավոր էր Լուկուլլոսի հաղթահանդեսի համար, կամ Տիգրանին պատերազմ հայտարարելու: Տիգրանը ջանում էր նրան լսել անվրդով ու հեգնալից, բայց ներկաներից աննկատ չմնաց, թե նրան որքան զարմացրեց այդ երիտասարդի համարձակ խոսքը: Նա համարյա առաջին անգամ էր լսում ազատ մարդու խոսք, առաջին անգամ այս քսանհինգ տարիների ընթացքում, որ թագավորում էր, կամ, ավելի ճիշտ ասած, ծանակում էր ժողովուրդներին: Նա Ապպիոսին պատասխանեց, թե ինքը չի հանձնի Միհրդատին, իսկ եթե հռոմայեցիները պատերազմ*

*սկսեն, ապա ինքը կպաշտպանվի: Զայրացած լինելով Լուկուլլոսի վրա, որ նա իր գրության մեջ իրեն անվանել էր «արքա», և ոչ թե «արքայից արքա», ինքը ևս իր պատասխանի մեջ նրան չէր անվանել իմպերատոր: Այսուհանդերձ Ապպիոսին նա շքեղ նվերներ ուղարկեց, իսկ երբ վերջինս մերժեց ընդունել, դրանց ավելացրեց նոր նվերներ ևս: Ապպիոսը, որպեսզի չկարծեն, թե նվերները մերժում է ընդունել Տիգրանի հանդեպ թշնամության պատճառով, վերցրեց միայն մեկ գավաթ, իսկ մյուս նվերները ետ ուղարկեց և շտապեց վերադառնալ իր զորավարի մոտ:*

*22. Մինչ այս պահը Տիգրանը ոչ մի անգամ չկամեցավ տեսակցել և խոսել Միհրդատի, իր իսկ ազգականի հետ, որը զրկվել էր այդքան մեծ թագավորությունից: Նա Միհրդատին վերաբերվում էր արհամարհանքով ու մեծամտությամբ և նրան, կալանավորի նման, պահվում էր իրենից հեռու, ճահճոտ և վատառողջ վայրերում: Սակայն այժմ կանչեց նրան իր մոտ, արքունիք, ցուցաբերելով հարգանքի և սիրո նշաններ: Արքաները գաղտնի խորհրդակցեցին իրար հետ, ձգտելով վերացներ փոխադարձ անվստահության պատճառները և մերձավորների չար բախտից մեղքը բարդեցին նրանց վրա: Վերջիններիս թվում էր Մետրոդորոս Սկեպսիացին, մեծ իմացությամբ և պերճախոսությամբ հայտնի մի մարդ[14], որը Միհրդատի մոտ այնպիսի հեղինակություն էր ձեռք բերել, որ նրան անվանում էին «թագավորի հայր»: Պատմում են, թե երբ Միհրդատը սրան ուղարկել էր Տիգրանի մոտ հռոմայեցիների դեմ օգնություն խնդրելու, Տիգրանը նրան հարցրել էր. «Իսկ դու, ո՛վ Մետրոդորոս, այս դեպքում ինչպիսի՞ խորհուրդ կտաս»: Իսկ նա, գուցե Տիգրանին բարիք ցանկանալով, գուցեև Միհրդատին՝ չարիք, պատասխանել է. «Իբրև դեսպան խորհուրդ եմ տալիս օգնել. իսկ իբրև խորհրդատու՝ մերժել»: Այդ ժամանակ Տիգրանն այս ամենը պատմում է Միհրդատին, բայց խնդրում դաժան չվարվել Մետրոդորոսի հետ: Սակայն Միհրդատը անհապաղ սպանում է Մետրոդորոսին, և Տիգրանը զղջում է իր անկեղծության համար: Ասենք, այս անկեղծությունը Մետրոդորոսի խորտակման միակ պատճառը չէր. այն միայն խթանեց Միհրդատի չար դիտավորությունները, քանի որ նա գաղտնաբար վաղուց ատում էր իր մերձավորին: Եվ սա լիովին բացահայտվեց, երբ բռնագրավվեցին Միհրդատի գաղտնի գրությունները, որոնց մեջ կար նաև Մետրոդորոսին մահապատժելու հրամանը: Տիգրանը կազմակերպեց Մետրոդորոսի շքեղ հուղարկավորումը, չխնայելով ոչ մի ծախս, որպեսզի մահից հետո պատվեր նրան, ում կենդանության օրոք մատնել էր:*

*Տիգրանի արքունիքում իր վախճանը գտավ նաև հռետոր Ամփիկրատեսը[15], եթե արժե նրան ևս հիշատակել իր աթենական ծագման համար: Պատմում են, թե նա իբրև աքսորական ժամանեց Տիգրիսի վրա գտնվող Սելևկիա[16], և երբ նրան խնդրեցին այնտեղ պերճախոսության դասեր տալ, գոռոզաբար ու արհամարհանքով պատասխանեց. «Դելփինը տաշտում չի տեղավորվի»: Այնուհետև նա գնաց Տիգրանի կնոջ մոտ և Միհրդատի դստեր՝ Կլեոպատրայի արքունիքը, բայց շուտով զրպարտվեց. նրան արգելեցին որևէ հարաբերություն ունենալ հույների հետ, և նա իրեն սովամահ արեց: Նրան նույնպես պատիվներով հուղարկավորեց Կլեոպատրան. նրա գերեզմանը գտնվում է Սափիի մոտ. այդպես է կոչվում այդ երկրում գտնվող ինչ-որ բնակավայրը:*

*23. ... Մինչ այդ, նրան հայտնեցին, թե Միհրդատը և Տիգրանը մտադիր են իրենց ուժերով մոտ ժամանակներս մտնել Լիկաոնիա[17] և Կիլիկիա, որպեսզի իրենք առաջինը սկսեն պատերազմական գործողությունները, ներխուժելով պրովինցիա Ասիա: Այս հանգամանքը ստիպեց Լուկուլլոսին տարակուսել Տիգրանի վերաբերմունքից: Եթե նա մտադիր էր հարձակվելու հռոմայեցիների վրա, ապա նա ինչո՞ւ չդաշնակցեց Միհրդատի հետ այն ժամանակ, երբ պոնտացին գտնվում էր իր հզորության բարձունքին, ինչո՞ւ նա իր զորքերը չմիացրեց նրա բանակին, երբ վերջինս լիակատար ուժ էր. ինչո՞ւ թույլ տվեց, որ Միհրդատն ընկնի և թուլանա, իսկ այժմ պատերազմ է սկսում հաջողության նվազագույն հույսով, իրեն կործանման մատնելով նրանց հետ, ովքեր արդեն չեն կարող ուշքի գալ և ոտքի կանգնել:*

*24. Այս ամենից հետո, երբ Մաքարեսը, Միհրդատի որդին, որ տիրում էր Բոսպորյան թագավորությունում, Լուկուլլոսին պսակ ուղարկեց հազար ոսկի արժողությամբ, խնդրելով իրեն ճանաչել հռոմեական ժողովրդի բարեկամ ու դաշնակից, Լուկուլլոսը նախկին պատերազմը ավարտված համարեց և Սոռնատիոսին թողնելով վեց հազարանոց զորամասով Պոնտական մարզը պահպանելու, ինքը 12 հազար հետևակով և 3 հազարից էլ պակաս հեծյալներով մեկնեց հաջորդ պատերազմը մղելու[18]: Կարող էր թվալ, թե ինչ-որ վայրենի, ող-ջախոհությանը հակառակ եռանդ նրան մղում է անհամար հեծելազոր ունեցող ռազմատենչ ցեղերի կենտրոնատեղին, անծայրածիր մի երկիր, որն ամեն կողմից շրջապատված է խորունկ գետերով և ձյունապատ լեռներով, որոնց վրա ձյունը չի հալչում: Իր զինվորները, որ առանց այն էլ աչքի չէին ընկնում հնազանդությամբ, գնում էին*

*դժկամությամբ, իրենց դժգոհությունը բացահայտ արտահայտելով: Նույն այդ ժամանակ Հռոմում ժողովրդի պարագլուխները Լուկուլլոսի դեմ հանդես էին գալիս բուռն կշտամբանքներով ու մեղադրանքներով, որ իբր նա մի պատերազմից անցնում է մյուսին,– թեև պետությունը դրա կարիքը բոլորովին չունի,– միայն թե ինքը մնա գլխավոր հրամանատար և առաջվա նման օգտվի վտանգներից, որոնց նա ենթարկում է հայրենիքը: Հետագայում այս չարախոսությունները հասան իրենց նպատակին:*

*Լուկուլլոսն արդեն արագ կերպով անցավ ճանապարհը մինչև Եփրատ, բայց վշտացավ, տեսնելով, որ գետը վարարել էր ու պղտորվել ձմեռային անձրևների պատճառով: Նա մտածեց, որ հարկադրված կլինի երկարատև ու ծանր աշխատանք թափել լաստանավեր շինելու և նավակամուրջ պատրաստելու համար: Սակայն երեկոյան ջուրն սկսեց իջնել և գիշերվա ընթացքում այնքան պակասեց, որ առավոտյան կարելի էր տեսնել, որ գետը պարփակվել է իր հունի մեջ: Երբ տեղի բնակիչները նկատեցին, որ անցավայրում փոքրիկ կղզյակներ են հայտնվել և դրանց շուրջ ջուրը ծանծաղացել է. սկսեցին իբրև աստված մեծարել Լուկուլլոսին, քանի որ առաջներում նման բան հազվադեպ էր պատահում, իսկ այժմ, ինչպես նրանց թվում էր, ինքը գետը հոժարակամ, սանձահարված և մեղմացած հնազանդվել էր նրան, հնարավորություն տալով արագ և դյուրին անցնել: Այսպիսով, Լուկուլլոսը, օգտվելով այս երջանիկ պատահարից, զորքն անցկացրեց Եփրատով: Գետն անցնելիս նրան բարենպաստ նախանշան երևաց: Այս վայրերում արածում էին երինջներ, նվիրված պարսկական Արտեմիսին, որին Եփրատի մյուս ափին բնակվող բարբարոսները առավել են պաշտում, քան մյուս աստվածներին: Այս երինջները սահմանված են միայն զոհաբերման համար. դրանք ազատորեն շրջում են այդ վայրերում, իրենց ճակատին կրելով խարանադրոշմ ջահ, որը դիցուհու նշանն է: Հեշտ չէ դրանցից որևէ մեկը բռնել հարկ եղած դեպքում: Եվ ահա, երբ Լուկուլլոսի զորքն անցնում էր Եփրատը, այդ երինջներից մեկը մոտեցավ դիցուհուն նվիրաբերված սրբազան մի ժայռի, կանգնեց դրա վրա և, խոնարհելով գլուխը, ինչպես այդ անում են պարանով տարվող երինջները, տրամադրեց իրեն Լուկուլլոսին զոհաբերման համար: Լուկուլլոսը Եփրատին ևս զոհաբերեց մի ցուլ, բարեհաջող գետանցի համար: Այդ օրը զորքը հանգստացավ, իսկ հաջորդ օրվանից սկսած Լուկուլլոսն առաջ շարժվեց Ծոփքի միջով, ոչնչով չնեղացնելով տեղաբնիկներին, որոնք հոժարակամ հնազանդվում էին նրան և սիրով*

*ընդունում հռոմեական զորքը[19]: Երբ զինվորները ցանկություն հայտնեցին գրավել մի բերդ, որտեղ կարծում էին, թե մեծ գանձեր կան, Լուկուլլոսը, ցույց տալով նրանց Տավրոսը հեռվում, ասաց. «Ավելի լավ է նվաճենք այն բերդը. իսկ սրանք առանց այդ էլ կմնան հաղթողներին»: Նա, արագացնելով իր երթը, անցավ Տիգրիսը և ներխուժեց Հայաստան:*

*25. Լուկուլլոսի մոտենալու մասին Տիգրանին հաղորդող առաջին լրաբերը ոչ մի պարգև չստացավ, այլ գլխատվեց, ուստիև ոչ ոք այլևս այդ մասին չէր խոսում, ու թեև արդեն պատերազմի կրակը բոլոր կողմերից մոտենում էր նրան, Տիգրանը շարունակում էր անտեղյակ մնալ: Նա լսում էր միայն նրանց, ովքեր պնդում էին, թե Լուկուլլոսը մեծ զորավար կհամարվի, եթե բավականաչափ համարձակություն ունենա Եփեսոսում[20] սպասել Տիգրանին և, տեսնելով նրա անհամար զորքերը, չփախչել Ասիայից: Այո, ամեն միտք չէ, որ կարողանում է չմթագնել մեծ հաջողություններից, ինչպես որ ամեն մարմին չէ, որ կարողանում է դիմանալ մեծաքանակ անխառն գինուն: Տիգրանի մերձավորներից առաջինը Մեհրուժանն էր[21], որ համարձակվեց նրան ճշմարտությունը հայտնել: Նա ևս իր անկեղծության համար վատ պարգև ստացավ: Երեք հազար հեծյալով և մեծաթիվ հետևակով նա անմիջապես ուղարկվեց Լուկուլլոսի դեմ, զորավարին կենդանի բռնելու, իսկ մյուսներին կոտորելու հրամանով: Այդ ժամանակ Լուկուլլոսի զորքի մի մասն արդեն տեղավորվում էր ճամբարում, իսկ մյուս մասը դեռևս ճանապարհին էր: Երբ առաջապահ հետախույզները հաղորդեցին թշնամու մոտենալու մասին, Լուկուլլոսը անհանգստացավ, որ հակառակորդը, հարձակվելով իր դեռևս ցրված ու չկարգավորված զորքի վրա, կարող է խուճապ առաջացնել: Ուստի և ինքը շարունակեց կարգավորել ճամբարը, իսկ լեգատ Սեքստիլիոսին նախապես ուղարկեց թշնամու դեմ 1600 հեծյալով և քիչ ավելի ծանրազեն ու թեթևազեն հետևակով, հրամայելով նրան մոտենալ ու դիմադրել թշնամուն և սպասել լուրի՝ թե Լուկուլլոսի հետ մնացած զորքը արդեն տեղավորվել է ճամբարում: Սեքստիլիոսն ուզում էր այդպես էլ վարվել, բայց Մեհրուժանը հանդուգն հարձակմամբ ստիպեց նրան կռվի բռնվել, և մարտն սկսեց: Մեհրուժանն ընկավ զենքը ձեռքին. նրա զինվորները, բացի քչերից, փախչելուց սպանվեցին:*

*Այնուհետև Տիգրանը թողեց իր իսկ հիմնած Տիգրանակերտ հսկա քաղաքը, նահանջեց դեպի Տավրոս և սկսեց բոլոր կողմերից իր զորքերն այստեղ հավաքել: Լուկուլլոսը, որպեսզի ժամանակ չտա նրան*

*պատրաստվելու, Մուրենային ուղարկեց, հանձնարարելով նրան հարձակվել Տիգրանի մոտ գնացող ուժերի վրա և արգելել նրանց կենտրոնացումը. ուղարկեց նաև Սեքստիլիոսին, որպեսզի սա փակի արքային օգնության շտապող արաբական խոշոր զորամասի ճանապարհը: Սեքստիլիոսը հարձակվեց արաբների վրա այն պահին, երբ սրանք բանակ էին դնում, և մեծ մասին կոտորեց. իսկ Մուրենան, հետապնդելով Տիգրանին, երբ վերջինս անցնում էր նեղ ու երկար կիրճով, օգտվեց հարմար պահից և հարձակվեց արքայի զորքի երկարաձիգ շարքերի վրա: Տիգրանը, թողնելով իր ամբողջ գումակը, կարողացավ փախչել: Հայերից շատերն սպանվեցին, իսկ մեծ մասը գերի ընկավ:*

*26. Եվ ահա, երբ գործերն արդեն այսպես հաջող էին ընթանում, Լուկուլլոսը թողեց ճամբարը, շարժվեց Տիգրանակերտի վրա և, դիրքավորվելով քաղաքի պարիսպների մոտ, սկսեց այն պաշարել: Տիգրանակերտում ապրում էին մեծ թվով հույներ, որոնք բռնագաղթվել էին Կիլիկիայից, և բարբարոսներ՝ ադիաբենացիներ, գորդիեններ, կապադովկիացիներ, որոնց նույն բախտն էր վիճակվել. Տիգրանը ավերել էր նրանց քաղաքները, իսկ մարդկանց բռնի քշել և ստիպել բնակվել այստեղ: Տիգրանակերտում կային առատ գանձեր և աստվածներին նվիրված թանկարժեք ընծայաբերումներ, քանզի ամեն մի հասարակ մարդ և իշխանավոր, արքայի հանդեպ ունեցած հարգանքի պատճառով, իրար հետ մրցում էին քաղաքի ընդարձակման և բարեկարգման համար: Այդ պատճառով էլ Լուկուլլոսն ուժեցացրեց պաշարումը, այն հույսով, որ Տիգրանը չի համբերի, այլ տույրք կտա զայրույթին և, ի հեճուկս իր իսկ մտադրության, կգա վճռական ճակատամարտ տալու: Լուկուլլոսի հաշվարկը ճիշտ դուրս եկավ: Ճիշտ է, բազմիցս, և՛ սուրհանդակների միջոցով, և՛ նամակներով, Միհրդատը խորհուրդ էր տալիս խուսափել ճակատամարտից, բայց հեծելազորի օգնությամբ խափանել թշնամու մատակարարումը: Նույնպիսի համառությամբ արքային փորձում էր համոզել զգույշ լինել և խուսափել, ինչպես ինքն էր ասում, անպարտելի հռոմեական զենքի հետ հանդիպելուց, նաև Միհրդատի կողմից ուղարկված Տաքսիլեսը[22], որը նույնպես մասնակցում էր արշավանքին: Սկզբում Տիգրանը հանգիստ լսում էր նման խորհուրդները, բայց երբ նրա մոտ միավորվեցին իրենց համայն զորքով հայերն ու գորդիենները, և իրենց զորքերի գլուխն անցած հայտնվեցին մեդացի և ադիաբենացի արքաները, երբ Բաբելոնյան ծովից[23] ժամանեցին արաբական մեծնաթիվ զորքերը, իսկ Կասպից ծովից ադվանից և նրանց սահմանակից իբեր-*

*ների ամբոխները, և երբ արդեն նրանց միացան նաև, նույնպես ոչ փոքրաթիվ, Արաքսի ափերի[24] ազատ ցեղերը, որոնց Տիգրանը համոզել էր սիրալիրությամբ և ընծաներով, այնժամ արդեն և' արքայական խնջույքներում, և' թագավորական խորհրդում լսվում էին միայն բարբարոսներին հատուկ ինքնավստահ գովասանքներ և սպառնալիքներ: Տաքսիլեսին մահապատիժ էր սպառնում այն բանի համար, որ նա հանդես էր գալիս ճակատամարտ տալու դեմ. Տիգրանն սկսեց անգամ Միհրդատին կասկածել, թե, նախանձից դրդված, նա փորձում է իրեն ետ պահել մեծ սխրանքից: Հենց այդ պատճառով էլ Տիգրանը չսպասեց Միհրդատին, որպեսզի չկիսի փառքը նրա հետ, և դուրս եկավ ամբողջ զորքով: Ընդ որում, պատմում են, թե նա գանգատվում էր ընկերներին և ափսոսում, որ ինքը պետք է չափվի միայն Լուկուլլոսի և ոչ թե Հռոմի բոլոր զորավարների հետ միանգամից: Նրա անձնավստահությունը ամենևին էլ չի կարելի անբանական և անմիտ համարել. չէ՞ որ նա իր զորքերում տեսնում էր այսքան ցեղեր և արքաներ, ծանրազեն հետևակի այսքան մարտաշարքեր, հեծյալների այսքան բազմություն: Հիրավի, նա ուներ երկու բյուր աղեղնավոր և պարսատիկավոր, հինգ բյուր և հինգ հազար հեծյալ, որոնցից մեկ բյուր և 7 հազարը զրահապատ էին, - այս թիվն է նշված սենատին հղած Լուկուլլոսի զեկույցներում,- 15 բյուր ծանրազեն հետևակ, թվական տարբեր կազմ ունեցող զորամիավորումներում: Ճանապարհաշինարարների, կամուրջ կապողների, գետերը մաքրողների, անտառահատների և այլ աշխատանքներով զբաղվողների թիվը երեք և կես բյուր էր. սրանք դասավորված էին մարտիկների ետևում և զորքին հաղորդում էին առավել պատկառազդու տեսք, միաժամանակ մեծացնելով նրա հզորությունը[25]:*

*27. Երբ Տիգրանը Տավրոսն անցնելով իր զորքով հայտնվեց և տեսավ Տիգրանակերտի առաջ բանակած հռոմեական զորքը, պաշարված բարբարոսները նրա հայտնվելը դիմավորեցին ծափահարություններով ու խլացուցիչ ճիչերով և պարիսպների վրայից սկսեցին հռոմայեցիներին մատնացույց անել հայկական զորքը: Լուկուլլոսի հրավիրած ռազմական խորհրդում ոմանք առաջարկում էին, պաշարումը վերացնելով, գնալ Տիգրանի դեմ, իսկ մյուսներն ասում էին, թե չի կարելի ետևում թողնել այսքան թշնամիների, ինչպես և չի կարելի դադարեցնել պաշարումը: Լուկուլլոսը հայտարարեց, թե երկու կողմերն էլ, առանձին վերցրած, իրավացի չեն, բայց միասին վերցրած, լավ խորհուրդ են տալիս, և նա զորքը բաժանեց երկու մասի: Մուրենային վեց հազար հետևակով նա թողեց պաշարումը չարու-*

*նակելու, իսկ ինքը վերցրեց իր հետ 24 կոհորտա, որը կազմում էր ոչ ավելի քան մեկ բյուր ծանրազեն հետևակ, ինչպես նաև ամբողջ հեծելազորը և շուրջ հազար պարսատիկավոր և աղեղնավոր, և նրանց հետ շարժվեց թշնամու դեմ[26]: Երբ նա ճամբարեց գետի մոտ, ընդարձակ դաշտում[27], նրա զորքը Տիգրանին թվաց խիստ աննշան: Արքային քծնողներին սա առիթ տվեց սրամտելու: Ոմանք հմտորեն ծանակում էին, մյուսները զվարճանալու համար վիճակ էին գցում ձեռք բերվելիք ավարի շուրջ, և չկար մի զորապետ կամ արքայիկ, որը չդիմեր Տիգրանին, ամբողջ գործը միայն իրեն հանձնարարելու խնդրանքով, իսկ ինքը թող նստեր և մնար հանդիսատես: Տիգրանն ինքը ևս ուզում էր նուրբ սրամտող թվալ. և նա ասաց բոլորին հայտնի իր հետևյալ խոսքը. «Որպես դեսպանություն սրանք շատ են, իսկ որպես զորք՝ քիչ»: Այդ օրն այդպես էլ անցավ կատակներով ու զվարճանքով:*

*Հաջորդ օրվա լուսաբացին Լուկուլլոսն յուրայիններին դուրս բերեց լիազեն: Թշնամու զորքը կանգնած էր գետից արևելք. ի դեպ, գետն այնտեղ թեքվում է արևմուտք, և այդ ուղղությամբ է գտնվում գետանցման առավել հարմար վայրը: Եվ երբ Լուկուլլոսը շտապեց իր զորքին այնտեղ տանել, Տիգրանը կարծեց, թե նա նահանջում է: Արքան իր մոտ կանչեց Տաքսիլեսին և ծիծաղելով ասաց. «Տեսնո՞ւմ ես, ինչպես է փախչում քո «անպարտելի» հռոմեական հետևակը»: Ի պատասխան Տաքսիլեսն ասաց. «Ես կուզենայի, տեր արքա, որ հանուն քո բարեբախտության կատարվեր անկարելին: Չէ՞ որ այս մարդիկ ճանապարհին չեն հագնում իրենց լավագույն զգեստը, չեն մաքրում իրենց վահանները և չեն մերկացնում սաղավարտները, ինչպես հիմա, երբ նրանք իրենց զենքերը հանել են կաշվե պատյաններից: Այս փայլը ցույց է տալիս, որ նրանք մտադիր են կռվելու և արդեն հիմա գնում են թշնամու դեմ»: Նա դեռևս չէր վերջացրել իր խոսքը, երբ Լուկուլլոսը ետ շրջեց իր զորքը, հայտնվեց առաջին արծիվը, և կոհորտաներն սկսեցին գետանցման համար շարվել ըստ կենտուրիաների: Տիգրանը դժվարությամբ ուշքի եկավ, ասես գինարբուքից հետո, և երկու-երեք անգամ բացականչեց. «Այդ մե՞զ վրա են գալիս»: Խառնաշփոթի մեջ նրա հրոսակները սկսեցին դասավորվել մարտակարգով: Ինքը արքան վերցրեց կենտրոնը, ձախ թևը վստահեց Ադիաբենեի թագավորին, իսկ աջ թևը, որի առաջին շարքերում գտնվում էր նաև զրահապատ հեծելազորի մեծագույն մասը, հանձնարարեց մեդացիների թագավորին:*

*Երբ Լուկուլլոսը դեռ նոր էր պատրաստվում գետն անցնել, զո-*

*բագլուխներից ոմանք նրան համոզում էին զգուշանալ, քանզի այդ օրն այն «սև» կոչված դժբախտ օրերից էր: Անցյալում այդ օրը կոտորվել էին կիմբրերի դեմ ճակատամարտում[28] Կեպիոնի գլխավորած հռոմեական զորքերը: Բայց Լուկուլլոսը նրանց պատասխանեց հետևյալ հիշարժան խոսքով. «Իսկ ես հռոմայեցիների համար այդ օրն էլ կդարձնեմ երջանիկ»: Դա հոկտեմբերյան նոնների նախօրեին էր (***հոկտեմբերի 6-ին – Պ. Հ.***):*

*28. Այս ասելուց հետո, նա պատվիրեց զինվորներին աչալուրջ լինել, իսկ ինքը գետն անցավ և առաջինը շարժվեց թշնամու դեմ: Նա հագել էր երկաթե թեփուկապատ պսպղուն զրահ ու ծոպավոր թիկնոց: Արագորեն անցնելով նետընկեց տարածությունը, նա իսկույն մերկացրեց թուրը, քանի որ հեռվից նետերով հարվածող հակառակորդի դեմ կռվելիս պետք էր անհապաղ ձեռնամարտի բռնվել: Այնտեղ նա նկատեց, որ զրահապատ հեծելազորը, որի վրա թշնամին մեծ հույսեր էր դրել, դասավորված է հարթ և լայն գագաթ ունեցող մի բլրի ստորոտում, իսկ բլրի գագաթը տանող չորս ասպարեզ երկարությամբ ճանապարհը ոչ թեք էր, ոչ էլ դժվարամատչելի: Ուստիև նա հրամայեց իր մոտ եղած թրակացի և գալատացի հեծելազորայիններին թշնամու հեծելազորին հարվածել կողքից և սրերով ետ մղել նրանց նիզակները, քանզի այդ զրահապատ հեծյալների ամբողջ ուժը հենց այդ նիզակներն էին, որից բացի նրանք ոչինչ չունեին իրենց պաշտպանելու և կամ թշնամուն հարվածելու համար, ասես նրանք փակված էին իրենց ծանր, չծալվող զրահների մեջ: Ինքը, Լուկուլլոսը, երկու կոհորտայի գլուխն անցած, նետվեց դեպի բլուրը: Զինվորները մեծ ոգևորությամբ հետևեցին նրան, քանի որ տեսան, որ իրենց զորավարը զենքը ձեռքին, հետիոտն, առաջինը ինքն է գնում թշնամու վրա, իրենց հետ բաժանելով դժվարություններն ու վտանգները: Բլուրը բարձրանալով, Լուկուլլոսը կանգնեց բոլորի համար տեսանելի տեղում և գոռաց. «Մերն է հաղթանակը, մերն է, մարտիկներ»: Այս խոսքերով նա զինվորներին առաջնորդեց զրահապատ հեծելազորի դեմ և հրամայեց այլևս տեգերը չգործադրել, այլ ընդհուպ մոտենալ թշնամուն և սրերով հարվածել թշնամու ազդրերին ու անպաշտպան մասերին: Ասենք, այս ամենի կարիքը չկար, քանի որ զրահապատ հեծյալները չդիմացան հռոմայեցիների հարձակմանը, այլ աղաղակելով, ամոթալի փախուստի դիմեցին և զրահներով ծանրացած իրենց ձիերով մխրճվեցին իրենց իսկ հետևակի շարքերի մեջ, նախքան սրանք կռվի կբռնվեին: Այսպիսով, առանց արյուն հեղելու, հսկայական այդ բանակը պարտության մատնվեց: Տիգրանի*

*զինվորները փախան, ավելի ճիշտ, փորձեցին փախչել, բայց իրենց շարքերի խտության ու խորության պատճառով, իրենք փակում էին իրենց իսկ ճանապարհը, որի պատճառով էլ մեծ կոտորած սկսվեց: Տիգրանը ճակատամարտի սկզբում փոքրաթիվ ուղեկիցների հետ դիմեց փախուստի: Տեսնելով, որ իր որդին ևս դժբախտության մեջ է, նա վերցրեց խույրն իր գլխից և արտասվելով այն հանձնեց նրան ու հրամայեց, որ ինքն իրեն փրկի բոլոր հնարավոր միջոցներով[29]: Բայց պատանին չհամարձակվեց խույրը դնել գլխին, այլ այն տվեց պահելու իր ամենահավատարիմ ծառային: Դիպվածով այս ծառան գերի ընկավ և, այսպիսով, Տիգրանի խույրը ևս ավելացավ մյուս ավարին: Ասում են, որ թշնամու հետևակից կոտորվեց հարյուր հազարից ավելի մարդ, իսկ հեծելազորից շատ քչերն էին փրկվել: Հռոմայեցիներից վիրավորվել էր 100 մարդ և սպանվել հինգը[30]:*

*Փիլիսոփա Անտիոքոսը[31] «Աստվածների մասին» գրքում, խոսելով այս ճակատամարտի մասին, պնդում է, որ արևը դեռևս սրա նմանը չի տեսել. իսկ մեկ այլ փիլիսոփա, Ստրաբոնը «Պատմական հիշատակարաններ» գրքում[32] պատմում է, թե իրենք հռոմայեցիները ամոթ էին զգում և ծիծաղում իրենց վրա այն պատճառով, որ զենք էին բարձրացրել այսպիսի խառնամբոխի դեմ: Լիվիոսի[33] պատմելով, հռոմայեցիները երբեք չեն կռվել թվով իրենց այսքան գերազանցող թշնամու դեմ. իրոք, հաղթողները հազիվ թե կազմեին պարտվողների քսաներորդ մասը: Ինչ վերաբերում է ռազմական գործում առավել ճարտար և հմուտ հռոմայեցի զորականներին, ապա նրանք Լուկուլլոսին գովում էին առավելապես այն բանի համար, որ նա հաղթել էր երկու ամենափառաբանված և ամենահզոր արքաների երկու հակադիր միջոցներով՝ սրընթացությամբ և անշտապությամբ. եթե Միհրդատին, որն այն ժամանակ գտնվում էր իր հզորության գագաթնակետին, նա ի վերջո հյուծեց, պատերազմը ձգձգելով, ապա Տիգրանին ջախջախեց կայծակնային հարվածով: Բոլոր ժամանակներում շատ չեն եղել նրա նման զորավարները, որոնք սպասողականությամբ ճանապարհ հարթեին իրենց գործողությունների համար, այլ համարձակ ճնշումով ապահովել են անվտանգությունը:*

*29. Ահա այս իսկ պատճառով Միհրդատը չէր շտապում, ենթադրելով, որ Լուկուլլոսը պատերազմը կվարի իրեն հատուկ զգուշությամբ, ճակատամարտերից խուսափելով: Նա անշտապ գնում էր միանալու Տիգրանին, երբ հանկարծ նրան պատահեցին մի քանի հայեր, որոնք շփոթված և ահաբեկված նահանջում էին նույն ճանապարհով: Նա կռահեց, որ վատ բան է կատարվել: Այնուհետև նրան*

*պատահեցին արդեն ավելի մեծ թվով անզեն և վիրավոր փախչողներ, որոնցից նա լսեց պարտության մասին, որից հետո սկսեց փնտրել Տիգրանին: Երբ նրան գտավ բոլորից լքված ու խեղճացած, Միհրդատը չուզեց նրան հիշեցնել եղած վիրավորանքները. ընդհակառակը, նա իջավ ձիուց և նրա հետ սկսեց ողբալ ընդհանուր աղետի համար, այնուհետև նրան տրամադրեց ծառաներ իր չքախմբից և քաջալերեց նրան ապագայի հույսերով: Սրանից հետո նրանք սկսեցին նորից զորք հավաքել:*

*Իսկ Տիգրանակերտում հելլեններն ապստամբել էին բարբարոսների դեմ քաղաքը Լուկուլլոսին հանձնելու նպատակով. ուստիև սա հարձակվեց ու գրավեց այն[34]: Վերցնելով Տիգրանակերտում գտնված գանձերը, նա քաղաքը թողեց զինվորների թալանին, որոնք, բացի, այլ բարիքներից, անտեղ գտան նաև 8 հազար տաղանդ դրամ: Այս ամենից բացի նա ռազմավարից նրանց տվեց յուրաքանչյուրին 800 դրաքմե[35]: Տեղեկանալով, որ քաղաքում գտնվում էին մեծ թվով դերասաններ, որոնց Տիգրանը ամեն կողմից հրավիրել էր իր կառուցած թատրոնի հանդիսավոր բացմանը, Լուկուլլոսը օգտագործեց նրանց ի պատիվ իր հաղթանակի կազմակերպված խաղերում ու հանդիսություններում:*

*Լուկուլլոսը հելլեններին ուղարկեց իրենց հայրենիքը, տալով նրանց ճանապարհածախս: Նա նույնպես վարվեց նաև Տիգրանակերտում բռնի բնակեցված բարբարոսների հետ: Այսպիսով, մի քաղաքի ավերումը բազմաթիվ քաղաքների վերածնվելու հնարավորություն տվեց, վերադարձնելով նրանց նախկին բնակիչներին: Այդ քաղաքներն այժմ մեծարում էին Լուկուլլոսին իբրև իրենց բարեգործի և վերահաստատողի:*

*Լուկուլլոսի մյուս գործերը ևս հաջող էին ընթանում, և նա արժանի էր դրան: Քանզի նա առավելապես ձգտում էր այնպիսի գովեստների, որոնք արդյունք են արդարադատության և մարդասիրության, քան թե ռազմական սխրանքների: Վերջիններիս համար նա մեծ չափով պարտական էր զորքին, բայց առավել մեծ չափով՝ բախտին. իսկ առաջինների մեջ դրսևորվում էին նրա հոգու հեզությունը և գերազանց դաստիարակությունը: Այս հատկություններով էլ Լուկուլլոսը առանց զենքի նվաճում էր այլերկրյա ժողովուրդներին: Այսպես, նրան էին ներկայացել արաբների թագավորները, հանձնելով իրենց տիրույթները: Նրան էր հարել նաև ծոփաց ցեղը: Գորդիենների մոտ նա այնպիսի նվիրվածություն առաջացրեց, որ նրանք ուզում էին թողնել իրենց քաղաքները և կանանց ու երեխաների հետ հետևել*

*նրան: Դրա պատճառը հետևյալն էր: Զարբիենոսը, գորդիենների թագավորը, ինչպես ասվեց, Ապպիոսի միջոցով Լուկուլլոսի հետ գաղտնի բանակցություններ էր վարել դաշնակցության շուրջ, քանի որ ճնշվում էր Տիգրանի բռնակալությունից: Այդ բանն իմացավ Տիգրանը, և Զարբիենոսը մահապատժի ենթարկվեց. նրա հետ սպանվեցին նաև նրա կինն ու որդիները: Սա կատարվեց դեռևս հռոմայեցիների Հայաստան ներխուժելուց առաջ: Լուկուլլոսն այդ դեպքը չմոռացավ. ուստիև, մտնելով գորդիենների երկիրը, նա Զարբիենոսի թաղման չքեղ ծեսեր կազմակերպեց, խարույկը զարդարեց զգեստներով, թագավորական ոսկիներով և Տիգրանից վերցրած թանկարժեք ավարով, իր ձեռքով վառեց խարույկը և հանգուցյալի ընկերների ու մերձավորների հետ զոհ մատուցեց, Զարբիենոսին անվանելով Հռոմի ժողովրդի բարեկամ և դաշնակից: Լուկուլլոսի հրամանով նրա պատվին կանգնեցվեց նաև թանկարժեք հուշարձան, քանզի Զարբիենոսի պալատում նա գտել էր մեծ քանակությամբ ոսկի ու արծաթ և երեք միլիոն մեդիմնոս[36] ցորեն: Այսպիսով, զինվորները հարստացան, իսկ Լուկուլլոսը համընդհանուր հիացմունքի արժանացավ, քանզի գեթ մեկ դրաքմե պետության գանձարանից չվերցնելով, պատերազմը վարում էր պատերազմի իսկ բերած միջոցներով:*

*30. Այդ ընթացքում նրա մոտ եկավ նաև դեսպանություն պարթև թագավորի[37] կողմից, բարեկամության և դաշինքի առաջարկով: Լուկուլլոսը ուրախացավ այդ առթիվ և իր կողմից դեսպանություն ուղարկեց պարթևի մոտ, որը, սակայն, բացահայտեց թագավորի դավաճանությունը. նա գաղտնաբար Տիգրանից պահանջել էր Միջագետքը, որպես վարձատրություն դաշնակցության համար[38]: Լուկուլլոսը, իմանալով այդ մասին, որոշեց հանգիստ թողնել Տիգրանին և Միհրդատին, համարելով այդ հակառակորդներին ջարդված, և գնաց պարթևների դեմ, նրանց հետ իր ուժերը չափելու: Քանզի նրան շատ էր հրապուրում այն միտքը, որ ռազմաշունչ մեկ հարձակումով ըմբիշի նման պարտության կմատնի երեք արքաների և հաղթանակներով ծայրեծայր կանցնի աշխարհի երեք հզորագույն տերությունները: Այդ պատճառով նա Պոնտոսում գտնվող Սորնատիոսին և մյուս զորավարներին հրաման հղեց իր մոտ բերել այնտեղ տեղավորված զորքերը: Նա ծրագրում էր արշավել Գորդիեններից: Սակայն, եթե այդ զորավարները նախկինում ևս հանդիպել էին իրենց զինվորների մռայլ անհնազանդությանը, ապա այս դեպքում արդեն նրանք համոզվեցին իրենց ստորադրյալների լիակատար սանձարձակությանը: Ո՛չ մեղմությամբ, ո՛չ խստությամբ նրանք չէին կարողանում հա-*

*մոցել զինվորներին, որոնք աղաղակում էին, թե իրենք այստեղ ևս չեն մնա և կհեռանան Պոնտոսից, այն թողնելով առանց որևէ պաշտպանի: Երբ այս լուրը հասավ Լուկուլլոսին, վատ ազդեցություն ունեցավ նաև նրա մոտ մնացած զորքերի վրա: Սովորելով ճոխության և չքեղության, զինվորները դարձել էին անտարբեր ծառայության հանդեպ և հանգիստ էին ցանկանում: Լսելով իրենց պոնտական ընկերների հանդուգն խոսքերի մասին, նրանց անվանում էին իսկական տղամարդ և ասում, որ այդ արարքը արժանի է ընդօրինակման. քանզի իրենց սխրանքներով իրենք վաղուց նվաճել են գործերից ազատ լինելու և հանգստի իրավունքը:*

*31. Լուկուլլոսը ստիպված էր լսել նման և ավելի վատ խոսքեր: Նա հրաժարվեց պարթևների դեմ արշավելուց և ամռան կեսին[39] դարձյալ քայլեց Տիգրանի դեմ: Տավրոսն անցնելուց հետո նա վհատվեց, տեսնելով, որ արտերը դեռևս կանաչ են (հունձն այստեղ այսքան ուշանում է օդի սառնության պատճառով): Այնուամենայնիվ, նա ցած իջավ, երկու թե երեք անգամ ետ մղեց հայերին, որոնք համարձակվել էին հարձակվել իր վրա և սկսեց անարգել ավերել բնակավայրերը: Նա գրավեց Տիգրանի համար պատրաստված ցորենի պաշարները, դրանով իսկ թշնամուն մատնեց այն զրկանքներին, որոնցից մինչ այդ վախենում էր ինքը: Լուկուլլոսը քանիցս փորձեց հայերին մարտի կոչել, նրանց ճամբարը խրամատներով փակելու միջոցով, կամ էլ նրանց աչքի առաջ երկիրը ավերելով: Սակայն նրանք, այն բանից հետո, երբ Լուկուլլոսն իրենց պարտության էր մատնել, հանգիստ էին մնում: Այնժամ նա շարժվեց դեպի Արտաշատ, Տիգրանի մայրաքաղաքը, որտեղ գտնվում էին թագավորի մանկահասակ երեխաները և նրա կանայք. Լուկուլլոսը ենթադրում էր, թե Տիգրանն այս քաղաքն արդեն առանց մարտի չէր զիջելու:*

*... Լուկուլլոսը շարժվում էր դեպի այդ քաղաքը, և Տիգրանը չէր կարող այս հանդուրժել: Նա իր զորքերով արշավեց և չորրորդ օրը բանակեց հռոմայեցիները մոտ, որոնցից իրեն բաժանում էր Արսանիաս գետը: Արտաշատ գնալու ճանապարհին հռոմայեցիներն անհրաժեշտաբար պետք է անցնեին այդ գետը: Լուկուլլոսը զոհ մատուցեց աստվածներին, ասես հաղթանակն արդեն տարել էր, և սկսեց իր զորքն անցկացնել մյուս ափը, առջևում դասավորվելով 12 կոհորտաները, իսկ մնացյալ զորքը թողեց ետևում, որպեսզի թշնամին չհարվածի թիկունքից: Նրանց դեմ կանգնած էին թշնամու մեծաթիվ հեծելազորը և ընտիր զորքեր, իսկ առաջին շարքերում գտնվում էին հեծյալ աղեղնավոր մարերը[40] և նիզակակիր իբերները*

*որոնց, բոլոր օտարականներից ավելի, Տիգրանը վստահում էր իբրև առանձնապես մարտունակների: Բայց սրանք ոչ մի սխրանք չկատարեցին, այլ, հռոմեական հեծելազորի հետ մի փոքր ընդհատվելուց հետո, չդիմացան հետևակի հարձակմանը և ցրվեցին այս ու այն կողմ: Հռոմեական հեծյալները, նրանց հալածելով, նույնպես ցրվեցին տարբեր կողմեր: Այդ պահին երևաց Տիգրանի հեծելազորը: Լուկուլլոսը, տեսնելով ձիավորների չքեղությունն ու բազմությունը, վախեցավ և հրամայեց իր հածյալներին՝ դադարեցնել հետապնդումը: Ինքն առաջինը հարվածեց ատրոպատենացիներին, որոնց լավագույն ուժերը գտնվում էին հենց իր դիմաց. նրանց սկզբից ևեթ այնպիսի սարսափ պատճառեց, որ նրանք փախուստի դիմեցին դեռևս ձեռնամարտի չբռնված: Այդ ճակատամարտում Լուկուլլոսի դեմ մասնակցած երեք թագավորներից[41] առավել խայտառակ փախչողը Միհրդատ Պոնտացին էր, որը չդիմացավ անգամ հռոմայեցիների ռազմական աղաղակներին: Հետապնդումը երկար տևեց և շարունակվեց ամբողջ գիշեր, քանի դեռ հռոմայեցիները չհոգնեցին ոչ միայն սպանելուց, այլև գերիներ վերցնելուց և ավար հավաքելուց: Լիվիոսը պատմում է, որ եթե առաջին ճակատամարտում թշնամու կորուստն ավելի մեծ էր, ապա այս կռվում, սպանվել ու գերի էին ընկել առավել անվանի մարդիկ[42]:*

*32. Նման հաջողությունից ոգևորված ու քաջալերված, Լուկուլլոսը որոշեց շարունակել իր ուղին դեպի երկրի խորքը և վերջնականապես ճնշել թշնամու դիմադրությունը: Սակայն աշնանային գիշերահավասարի ժամանակ[43] եղանակն անսպասելիորեն սաստիկ փչացավ: Գրեթե անընդհատ ձյուն էր տեղում, իսկ երբ երկինքը պարզվում էր, այնժամ եղյամ էր նստում և սառցակալում էր: Ձիերը հազիվ էին կարողանում խմել սառցակալած ջուրը. նրանք դժվարությամբ էին անցնում սառած գետը, քանի որ սառույցը ճղում էր և կտրում նրանց ջլերը: Այդ վայրերի մեծագույն մասը ծածկված էր խիտ անտառներով, շատ էին կիրճերն ու ճահիճները. այնպես որ զինվորները ոչ մի կերպ չէին կարողանում չորանալ: Ճանապարհին զինվորները ծածկվում էին ձյունով, թրջվում և քանի որ գիշերում էին բաց տեղերում, խիստ տանջվում էին[44]: Այդ պատճառով էլ ճակատամար - տից հետո նրանք սոսկ մի քանի օր հետևեցին Լուկուլլոսին, այնուհետև սկսեցին բողոքել: Սկզբում իրենց տրիբունների միջոցով խնդրում էին նրան, բայց հետո նրանց հավաքները դարձան առավել աղմկալի, իսկ վերջում սկսեցին գիշերներն աղմկել վրաններում. իսկ դա արդեն ապստամբական տրամադրության դրսևորում էր: Ու*

*թեև Լուկուլլոսը համառորեն խնդրում էր ու պնդում, որ նրանք մի փոքր ևս համբերեն, մինչև որ, վերցնելով Հայաստանի Կարթագենը, չոչնչացնեն ամենաթշնամի մարդու գործը (նա ակնարկում էր Հաննիբալին), բայց համոզել չկարողացավ. նա ստիպված ետ վերադարձավ[46]: Ետդարձի ճանապարհին նա Տավրոսն անցավ այլ լեռնանցքներով և իջավ Միգդոնիա[47] կոչված բարեբեր և տաք երկիրը: Այստեղ գտնվում է խոշոր և մարդաշատ մի քաղաք, որ բարբարոսները կոչում են Նիսիբիս, իսկ հույները՝ Միգդոնյան Անտիոք: Այս քաղաքում կառավարում էին երկուսը. իր բարձր դիրքի շնորհիվ կառավարիչը Գուրասն էր՝ Տիգրանի եղբայրը[48], իսկ իր փորձի ու մեքենաներ պատրաստելու մեծ հմտության՝ նույն այն Կալլիմաքոսը, որն Ամիսոսում Լուկուլլոսին այնքան չատ անախորժություններ էր պատճառել: Լուկուլլոսը բանակեց Նիսիբիսի պատերի տակ և գործի դրեց պաշարողական արվեստի բոլոր հնարները: Շուտով քաղաքը վերցվեց գրոհով: Գուրասը կամավոր հանձնվեց և արժանացավ գթալից վերաբերմունքի. իսկ Կալլիմաքոսին, թեև սա խոստացավ հռոմայեցիներին ցույց տալ խոշոր գաղտնի գանձատները, Լուկուլլոսը չուզեց լսել և հրամայեց շղթայակապ անել, որպեսզի հետագայում նրան պատժի այն հրդեհի համար, որը ոչնչացրեց Ամիսոսը և զրկեց Լուկուլլոսին բավարարելու իր պատվասիրությունը և ցույց տալու հույներին իր բարյացակամությունը:*

*34. ... Այս մեղադրանքներն[49] իրենց ներգործությունն ունեցան Լուկուլլոսի զորքերի վրա, և նրանք չհետևեցին իրենց զորապետին Տիգրանի և Միհրդատի դեմ: Վերջինս չհապաղեց Հայաստանից դարձյալ մտնել Պոնտոս և սկսեց վերանվաճել իր թագավորությունը[50], իսկ հռոմայեցի զինվորները անգործ նստել էին Գորդիենեում, պատճառ բռնելով ձմեռը և սպասելով, որ ահա ուր որ է կհայտնվի Պոմպեոսը կամ մեկ ուրիշ զորավար, փոխարինելու Լուկուլլոսին:*

*35. Երբ, սակայն, լուր ստացվեց, որ Միհրդատը ջարդել է Ֆաբիոսին[51] և գնում է Սոռնատիոսի ու Տրիարիոսի դեմ, զինվորներն ամոթ զգացին և հետևեցին Լուկուլլոսին: Տրիարիոսը, պատվասիրությունից մղված, չսպասելով արդեն մոտերքում գտնվող Լուկուլլոսին, ուզեց ձեռք բերել, ինչպես իրեն թվում էր, հեշտ հաղթանակ, բայց դրա փոխարեն ծանր պարտություն կրեց: Ինչպես հաղորդում են, այդ ճակատամարտում ընկան ավելի քան 7 հազար հռոմայեցիներ, որոնց թվում 150 ցենտուրիոն և 24 զինվորական տրիբուն: Ճամբարն ընկավ Միհրդատի ձեռքը[52]: Երբ մի քանի օր անց Լուկուլլոսը հասավ այնտեղ, նա ստիպված եղավ Տրիարիոսին թաքցնել մոլեգնած զին-*

վորներից: Միհրդատը խուսափում էր Լուկուլլոսին ճակատամարտ տալուց, սպասելով Տիգրանին, որը մեծ ուժերով գալիս էր միանալու նրան, և Լուկուլլոսը որոշեց շարժվել Տիգրանին ընդառաջ ու նրա հետ մարտի բռնվել, նախքան իր երկու թշնամիները դարձյալ կմիանային: Սակայն ճանապարհին փիմբրիականները[53] խռովություն բարձրացրին և լքեցին իրենց դիրքերը զորաշարքերում, պատճառաբանելով, որ իրենք զորացրված են սենատի որոշումով, իսկ Լուկուլլոսը այլևս իրավունք չունի հրամայելու իրենց, քանի որ պրովինցիաները ուրիշներին են հանձնվել[54]:

... Կարիքը ստիպեց Լուկուլլոսին բավարարվել անգամ այդ զիջումով, որպեսզի մենակ չմնա և երկիրը չհանձնի ախոյանին: Նա բոլոր զինվորներին պահում էր մեկ վայրում, այլևս նրանց ոչինչ չէր ստիպում և չէր տանում թշնամու դեմ, միայն թե նրանք իրենից չհեռանային: Նա ստիպված եղավ հաշտվել այն մտքի հետ, որ Տիգրանը ամայացնում էր Կապադովկիան[55], որ Միհրդատը վերադարձել էր իր հանդգնությունը, այն Միհրդատը, որի մասին սենատին զեկուցել էր, թե նրա հետ ամեն ինչ վերջացած է: Նրա այդ զեկույցից հետո Հռոմից ուղարկվել էին 10 պաշտոնատար անձինք, Պոնտոսում գործերը կարգավորելու համար, այն համարելով վերջնականապես նվաճված երկիր. բայց երբ նրանք տեղ հասան, համոզվեցին, որ Լուկուլլոսը անգամ ինքն իր գլխի տերը չէ. զինվորներն իրենց ցանկությամբ բռնադատում են նրան:

1. Խոսքը Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորի (111-63) մասին է, որը Միհրդատյան երկրորդ պատերազմի ժամանակ (73-71 թթ.) պարտություն էր կրել Լուկուլլոսից:

2. **Կաբիրա** - անառիկ ամրոց Պոնտոսի հարավարևելյան մասում, այժմ Նիքսար՝ Կելկիտ գետի ափին: Այստեղ 71 թ. Միհրդատը ծանր պարտություն կրեց հռոմեացիներից և մազապուրծ փախավ Հայաստան:

3. Պլուտարքոսը նկատի ունի այն, որ Տիգրանի կարգադրությամբ սելևկյան Սելենե թագուհին մահապատժի էր ենթարկվել:

4. Տալավրայի տեղադրությունը դեռևս լուսաբանված չէ:

5. Միհրդատ Եվպատորը Հայաստան փախավ 71 թ. աշնան սկզբներին:

6. Ցեղեր, որոնք այդ ժամանակ մտնում էին Պոնտական թագավորության կազմի մեջ: Տիբարեններն ու խալդայները բնակվում էին Սև ծովից հարավարևելք ընկած տարածքում:

7. Դեռևս Ք. ա. II դարի վերջերին Միհրդատ Եվպատորը գրավել էր Փոքր Հայքը և այն մտցրել Պոնտոսի կազմի մեջ:

8. **Ապպիոս** (Պուբլիոս Ապպիոս Կլավդիոս) - հռոմեական պետական գործիչ,

*58 Թ. ժողովրդական տրիբուն, Ցիցերոնի երդվյալ հակառակորդը. Լուկուլլոսի կնոջ՝ Կլավդիա Պուլխրայի, ավագ եղբայրը:*

*9. Քաղաք Սև ծովի հարավային ափին, Իրիսի գետաբերանից արևմուտք:*

*10. Անտիոքը հիմնադրել էր Սելևկոս I-ը Ք. ա. 300 թվականին և անվանել իր հոր անունով: Արդեն Ք. ա. II դարի վերջին այն ուներ 500 հազար բնակիչ և համարվում էր հին աշխարհի խոշորագույն քաղաքներից մեկը: Իր չքեղությամբ հայտնի էր հատկապես Անտիոքի արվարձանը՝ Դափնե զբոսավայրը, որի անունից քաղաքը հաճախ անվանում էին «Դափնեին կից Անտիոք»: Ք. ա. 83 Թ. Տիգրան II-ը նվաճելով Սելևկյան Ասորիքը՝ Անտիոքը դարձրեց իր տերության երրորդ՝ հարավային մայրաքաղաքը:*

*11. Այդ ժամանակ Տիգրանը չրջապատել էր Սելևկյան վերջին հենակետերից մեկը հանդիսացող Պտղոմայիս քաղաքը, ուր պատսպարվել էր Կլեոպատրա-Սելենե թագուհին:*

*12. Նվաճված երկրների բնակչության բռնի վերաբնակեցումը, որ հսկայական ընդգրկումով կատարվում էր Տիգրանի ժամանակ, նպատակ ուներ բավարարելու Հայաստանի ստրկատիրական տնտեսության աճող պահանջները: Մոտավոր հաշվումներով Տիգրանի օրոք Հայաստան է բերվել կես միլիոնից ոչ պակաս օտարերկրացի (տե՛ս* ***Г. Х. Саркисян,*** *Тигранакерт, М., 1960, էջ 60):*

*13. Այս վկայությունից չպետք է մակաբերել, թե իբր արաբական թափառական ցեղերը զբաղվելու էին առևտրով: Տիգրանը նրանց հանձնարարել էր տարանցիկ առևտրական ուղիների վերահսկողությունն ու պաշտպանությունը:*

*14.* ***Մետրոդորոս Սկեպսիացի*** *– հույն հռետոր ու փիլիսոփա՝ «Հռոմեատյաց» մականվամբ: Երկար տարիներ ծառայել է Միհրդատ Եվպատորին՝ վարելով Պոնտոսի գերագույն դատավորի պաշտոնը, այնուհետև դավաճանել է վերջինիս և ապաստան գտել Տիգրանի արքունիքում: Եղել է Տիգրանի պալատական պատմագիրը և գրել «Տիգրանի պատմությունը» վերտառությամբ մի երկասիրություն, որը մեզ չի հասել:*

*15.* ***Ամփիկրատես Աթենացի*** *– հույն նշանավոր հռետոր: Աթենքից արտաքսվելուց հետո ապաստան գտավ Տիգրանակերտում, որտեղ զբաղվում էր գրական գործունեությամբ, գրել է «Տիգրանի վարքը» երկը, որը մեզ չի հասել:*

*16. Տիգրիսյան Սելևկիան այդ ժամանակ պարթև Արշակունիների նստավայրն էր:*

*17. Լիկաոնիան գտնվում էր Կիլիկիայից հյուսիս-արևմուտք:*

*18. Լուկուլլոսի հայկական արշավանքն սկսվել է Ք. ա. 69 Թ. գարնանը:*

*19. Ծոփքի ավագանին, ըստ երևույթին, հույս ուներ իր այս քայլով, հռոմեացիների օգնությամբ, վերականգնելու ոչ հեռու անցյալում իր վայելած անկախությունը:*

*20.* ***Եփեսոս*** *– հին հունական քաղաք Փոքր Ասիայի արևմուտքում՝ Էգեյան*

*ծովի ափին, Կախստրոսի գետաբերանի մոտ: Ք. ա. 133 թվականից գտնվում էր Հռոմի կազմում:*

*21. **Մեհրուժան** (Միթրոբարզան, Միթրոբուզան) – սա, հավանաբար, Ծոփքի սատրապն էր, որը նշանակվել էր Տիգրանի կողմից այդ երկրամասը նվաճելուց հետո: Ենթադրվում է, որ Մեհրուժանը իր ծագմամբ պատկանում էր Ծոփքի Զարեհյանների թագավորական տանը:*

*22. Տաքսիլեսը Միհրդատի ամենաաչքի ընկնող զորավարներից էր, մասնակցել է Միհրդատյան առաջին պատերազմին (88–84 թթ.): Սա, ըստ երևույթին, Տիգրանի մոտ կատարում էր ռազմական խորհրդականի դեր:*

*23. Խոսքը այստեղ Պարսից ծոցի մասին է:*

*24. Պլուտարքոսն այստեղ, ըստ երևույթին, նկատի ունի Ամուդարյա (Արաքսես) գետի ափերին բնակվող սակառաուկ («սև սկյութներ») կոչվող ցեղերին:*

*25. Այսպիսով, ըստ Պլուտարքոսի, հայկական բանակի թիվը Տիգրանակերտի ճակատամարտում կազմում էր 300 հազար զինվոր, որն ակնհայտ չափազանցություն է: Փոքրասիական չեզոք պատմիչներ Մեմնոնի և Փլեգոնի վկայությունների համաձայն՝ հայկական բանակն ուներ 70–80 հազար մարտիկ:*

*26. Պլուտարքոսը խեղաթյուրված թվեր է բերում նաև Տիգրանակերտի ճակատամարտին մասնակցած հռոմեական զորքի քանակության մասին՝ գրելով, որ Լուկուլլոսն ուներ ընդամենը 14 հազար զինվոր: Բերված թվաքանակը վերաբերում է միմիայն հռոմեացիներից կազմված զորամասերին, մինչդեռ Լուկուլլոսն իր տրամադրության տակ պետք է ունենար նաև դաշնակիցների զորամասերը, որոնց հետ միասին նրա բանակն ուներ շուրջ 35–40 հազար զինվոր, որը միայն կիսով չափ էր պակաս հայկական բանակից և ոչ քսան, ինչպես ջանում է ներկայացնել Պլուտարքոսը:*

*27. Ուսումնասիրողները գտնում են, որ այդ վայրը Բաթման-սու գետի ձախ ափի հարթավայրն է՝ Բաթման-սու և Ֆարկին-սու գետերի միախառնման տեղում:*

*28. **Կիմբրացիներ** – գերմանական ցեղ, որը Ք. ա. 105 թ. հոկտեմբերի 6-ին գլխովին ջախջախեց Գնեոս Սերվիլիոս Կեպիոնոսի հռոմեական բանակին:*

*29. Այս միջադեպի մասին եղած մատենագրական վկայությունները (Պլուտարքոս, Մեմնոն, Փրոնտինոս, Դիոն Կասսիոս և այլք) խիստ հակասական են: Ուսումնասիրողները գտնում են, որ սա թխված ու հերյուրված է հենց Լուկուլլոսի կողմից՝ իր փառքն էլ ավելի շեշտելու միտումով:*

*30. Այսպիսով, ըստ Պլուտարքոսի, 100 հազարից ավելի սպանված հայերի դիմաց հռոմեացիներն ունեցել են միայն հինգը: Բանակների կորուստների մասին բերված այս տվյալները ևս խիստ խեղաթյուրված են: Փլեգոնն, օրինակ, խոսում է ընդամենը հինգ հազար հայ զինվորի կորստյան մասին:*

*31. **Անտիոքոս Իմաստասեր Ասկալոնացի** (125–68) – հայտնի հույն փիլիսոփա,*

*Աթենքի պլատոնյան դպրոցի ուսուցչապետը, Ցիցերոնի դաստիարակը: Նրա երկասիրությունները մեզ չեն հասել:*

*32. Ստրաբոնի այս երկասիրությունը, որը դժբախտաբար մեզ չի հասել, նվիրված է եղել Ք. ա. 146-27 թթ. իրադարձությունների նկարագրությանը:*

*33. Խոսքը հռոմեական հայտնի պատմագիր Տիտոս Լիվիոսի (Ք. ա. 58 - Ք. հ. 17 թթ.) մասին է, որը գրել է 142 գրքից բաղկացած «Հռոմեական պատմություն, սկսած քաղաքի հիմնադրումից» մեծածավալ երկասիրությունը: Պլուտարքոսն այս վկայությունը վերցրել է Լիվիոսի մեզ չհասած 98-րդ գրքից:*

*34. Պլուտարքոսի սույն վկայությունը կարևոր է այն տեսակետից, որ Լուկուլլոսը Տիգրանակերտը գրավել է ոչ այնքան ռազմական ուժի, որքան քաղաքի այլալեզու բնակչության դավաճանության ու ապստամբության շնորհիվ:*

*35. Այսպիսով, Տիգրանակերտից Լուկուլլոսը տարել է ութ հազար տաղանդ արծաթ, որ հավասար է 17 միլիոն ոսկի ռուբլու, բացի այդ, հռոմեական ամեն մի զինվոր ստացել էր 800-ական դրաքմե, այսինքն՝ 280 ոսկի ռուբլի յուրաքանչյուրը:*

*36. Այսինքն՝ այժմյան կշռով մոտ 120 հազար տոննա:*

*37. Խոսքը Պարթևաց Հրահատ III (70-57) թագավորի մասին է:*

*38. Հայ-պարթևական այս բանակցությունները նախաձեռնել էր Տիգրանը, որը հորդորում էր Հրահատ III-ին՝ դաշնակցել իր հետ Հռոմի դեմ մղվող պատերազմում, խոստանալով նրան հանձնել «Յոթանասուն հովիտներն» ու Հյուսիսային Միջագետքում որոշ տարածքներ:*

*39. Այսինքն՝ Ք. ա. 68 թվականի ամռանը:*

*40. Պլուտարքոսը հիշատակված սույն մարդերը բնակվում էին Կասպից ծովի հարավային ափերին:*

*41. Այսինքն՝ Հայոց թագավոր Տիգրան II-ը, Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորը և Ատրպատյան Մարաստանի թագավոր Միհրդատը, որը Տիգրանի դստեր ամուսինն էր:*

*42. Հայկական և հռոմեական բանակների միջև այս ճակատամարտը տեղի է ունեցել 68 թ. սեպտեմբերի կեսերին՝ Արածանի գետի ափին, Բագավանից հյուսիս, այժմյան Ղարաքիլիսայից 25-30 կմ դեպի արևելք: Պլուտարքոսը հռոմեացիների համար Արածանիի ճակատամարտի ելքը բնորոշում է որպես հաղթություն, սակայն դեպքերի հետագա ընթացքը ցույց է տալիս, որ այստեղ հռոմեացիների տարած որևէ հաղթանակի մասին խոսք անգամ լինել չի կարող, նրանք պարզապես պարտություն էին կրել, որի մասին ակնարկում է նաև Դիոն Կասսիոսը (տե՛ս 376-րդ էջ, ծան. № 9):*

*43. Այսինքն՝ 68 թվականի սեպտեմբերի 22-ին:*

*44. Պլուտարքոսի սույն հաղորդմանը չպետք է հավատ ընծայել, որովհետև Հայաստանում ցրտերն սկսվում են ոչ թե սեպտեմբերի կեսերին, այլ շատ ավելի*

*ուչ: Հետևաբար, հռոմեական բանակի նահանջի իրական պատճառը չէին կարող լինել ձյունը, սառնամանիքները, գետերի սառցապատումը և այլն:*

*45. Խոսքը Արտաշատ մայրաքաղաքի մասին է:*

*46. Այս հատվածում Պլուտարքոսի ներկայացրած աննկուն զորավարի և Թուլամորթ զորքի հակադրման տեսարանից, անչուշտ, շահում է Լուկուլլոսը, երբ հռոմեացիների Հայաստանից նահանջելու պատասխանատվությունը գցվում է միմիայն զորքի վրա: Հռոմեական զորքի բարոյալքումն ու վհատությունը հետևանք էին նախ և առաջ բանակի հսկայական կորուստների, սննդամթերքի ու ռազմամթերքի պակասության և նախօրոք կրած պարտության:*

*47. Երկրամաս Հյուսիսային Միջագետքում՝ Մծբին կենտրոնով:*

*48. Արքաեղբայր Գուրասը ոչ միայն Միգդոնիայի, այլ նաև Միջագետքում հայկական գերիշխանության ոլորտում գտնվող մյուս երկրների վերակացուն էր կամ փոխարքան:*

*49. Պուբլիոս Կլոդիոսը՝ վերը հիշատակված Ապպիոս Կլավդիոսի եղբայրը, չնայած Լուկուլլոսի ազգականն էր, բայց առաջիններից մեկն էր, որ սկսեց զինվորներին գրգռել գլխավոր հրամանատարի դեմ, բացահայտորեն նրան մեղադրելով ձգձգվող ու անօգուտ պատերազմի մեջ: Սա հետագայում, կաչառքի գնով, ազատ արձակեց Հռոմ տարված և այնտեղ բանտարկված Տիգրան Կրտսերին:*

*50. Միհրդատ Եվպատորը Պոնտոս մտավ 68 Թ. ուչ աշնանը:*

*51.* ***Ֆաբիոս Հադրիանոս*** *– հռոմեական զորավար, որին Լուկուլլոսը թողել էր որպես Պոնտոսում տեղաբաշխված հռոմեական բանակի հրամանատար: Սա գլխովին ջախջախվեց Միհրդատից և իր զորքերի մնացորդներով փախավ ու ամրացավ Կաբիրա բերդաքաղաքում:*

*52. Այս դեպքերը տեղի են ունեցել հաջորդ՝ 67 Թվականին, երբ Զելա ամրոցի մոտ հայ-պոնտական բանակները, Միհրդատի գլխավորությամբ, գլխովին ջախ - ջախեցին Գայոս Վալերիոս Տրիարիոսի զորամասերին:*

*53.* ***Ֆիմբրիականներ*** *– այսպես էին կոչվում այն կոհորտի զինվորները, որոնց լեգատն էր Գայոս Փլավիոս Ֆիմբրիան: Այս կոհորտն աչքի էր ընկնում իր ըմբոստ ու խռովարար բնավորությամբ և մի քանի առիթներով Ֆիմբրիան օգտագործել էր նրանց՝ գլխավոր հրամանատարության համար մղվող պայքարում:*

*54. Իրոք, 67 Թ. ժողովրդական տրիբուն Գաբինիոսի օրենքով՝ Լուկուլլոսը պաշտոնանկ էր հայտարարվել. նրանից վերցվեցին Բյութանիա և Պոնտոս պրո - վինցիաները և տրվեցին նույն Թվականի կոնսուլ Գլաբրիոնին: Այդ օրենքով արձակուրդ էր տրվում նաև ծառայության ժամկետը լրացրած Լուկուլլոսի զինվորներին:*

*55. Տիգրանը Կապադովկիա ներխուժեց 67 Թ. կեսերին և այստեղից դուրս քշեց հռոմեական դրածո Արիոբարզան Թագավորին: Այսպիսով, Լուկուլլոսի հայկական արշավանքն ավարտվեց լիակատար պարտությամբ:*

## ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՆ ԸՍՏ ԱՊՊԻԱՆՈՍԻ

*Ապպիանոս Ալեքսանդրիացին անտիկ պատմագրության կարկառուն դեմքերից մեկն է: Նա ծնվել է Ք. Հ. մոտավորապես II դարի սկզբին, Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքում՝ հույն մեծատոհմիկի ընտանիքում: Բարձր իրավաբանական պաշտոններ է վարել ծննդավայրում և Հռոմում: Ապպիանոսը մահացել է II դարի 70-ական թվականներին:*

*Մոտավորապես 160-ական թվականներին նա հունարեն լեզվով գրել է 24 գրքից բաղկացած «Հռոմեական պատմություն» երկասիրությունը: Ամբողջությամբ պահպանվել են 6-8-րդ և 11-17-րդ գրքերը, իսկ 18-24-րդ գրքերը կորել են, մնացածներից մեզ են հասել միայն առանձին պատառիկներ: Այստեղ, առանց որոշակի ժամանակագրության, Ապպիանոսը շարադրել է Հռոմի պատմությունը՝ քաղաքի հիմնադրումից մինչև Տրայանոս կայսեր տարիները (Ք. Հ. II դարի սկզբները):*

*Նկարագրելով Հռոմի վարած նվաճողական պատերազմները՝ Ապպիանոսը անդրադառնում է նաև հերթական պատերազմի նպատակակետ հանդիսացող այս կամ այն երկրի ու ժողովրդի, այդ թվում և Հայաստանի, քաղաքական պատմությանը: «Հռոմեական պատմության» հիմնական գաղափարը Հռոմեական կայսրության փառաբանումն է: Պատմագիրը ջանք չի խնայում շեշտելու Հռոմի վեհությունն ու հզորությունը, արդարացնելու վերջինիս նվաճողական պատերազմները:*

*Հելլենիստական Հայաստանի II-I դդ. պատմության ուսումնասիրության համար առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում Ապպիանոսի աշխատության 11-րդ (Սիրիական) և 12-րդ (Միհրդատական) գրքերը:*

*Ապպիանոսից ստորև բերված հատվածները տալիս ենք Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ, որը կատարված է* «Appiani Alexandrini, Historia Romana, Bibl. Teubner., I-II, Lipsiae, 1879» *հրատարակությունից:*

## *Գիրք XI, ՍԻՐԻԱԿԱՆ*

*48. Եվ Հայաստանի թագավոր Տիգրանը՝ Տիգրանի[1] որդին, հպատակեցնելով իրենց սեփական դինաստներին ունեցող մի շարք հարևան ազգերի, այնուհետև հռչակվեց արքայից արքա և արշավեց Սելևկյանների վրա, որոնք չէին կամեցել հպատակվել նրան: Անտիոքոս Եվսեբեսը[2] չկարողացավ դիմադրել նրան, և Տիգրանը տիրեց Եփրատից այն կողմ գտնվող Սիրիային, մինչև Եգիպտոս բնակվող սիրիական ցեղերի (երկիրը): Միաժամանակ նվաճեց Կիլիկիան, քանզի այն ևս հպանակվում էր Սելևկյաններին և այդ բոլորի վրա ստրատեգոս նշանակելով Մագադատեսին[3], 14 տարի (իշխեց)[4]:*

*49. Մինչ հռոմեացիների զորավար Լուկուլլոսը հետապնդում էր Տիգրանի մոտ ապաստանած Միհրդատին, Մագադատեսը գնաց իր զորքով Տիգրանին օգնելու, Անտիոքոս Եվսեբեսի որդի Անտիոքոսը[5] թաքուն մտավ Սիրիա և իշխեց սիրիացիների վրա, նրանց կամքով:*

*66. Անտիոքոս (Էպիփանեսը)[6] թագավորեց ոչ լրիվ 12 տարի. այդ ընթացքում նա հաղթեց հայ Արտաշեսին[7] և արշավեց Եգիպտոս[8] Պտղոմեոսի[9] դեմ, որը որբ էր մնացել եղբոր հետ միասին:*

*69. Անտիոքոս Գրյուպոսի[10] որդի Սելևկոսին[11] հաջորդում է Անտիքոս (Եվսեբեսը)՝ Կիզիկացու[12] որդին...: Այս Եվսեբեսը ամուսնացավ Սելենեին, որը եղել էր նրա հոր՝ Կիզիկացու, ինչպես և նրա հորեղբոր՝ Գրյուպոսի կինը: Այս պատճառով էլ աստված նրան պատժեց և նրան Տիգրանը քշեց իշխանությունից:*

## *Գիրք XII, ՄԻՀՐԴԱՏԱԿԱՆ*

*15. «Հայ Տիգրանը Միհրդատի[13] փեսան էր, իսկ պարթև Արշակը՝ բարեկամը»[14]:*

*67. Միհրդատը իր փեսա Տիգրանին համոզեց ներխուժել Կապադովկիա, իբր ինքնաբերաբար: Այս խորամանկումը չվրիպեց հռոմեացիներից. բայց Հայը Կապադովկիան պաշարելով[16], մոտ 30 բյուր մարդ տեղահանեց ու տեղափոխեց Հայաստան և նրանց, այլոց հետ միասին, համաբնակեցրեց մի վայրում, որտեղ նա առաջին անգամ հագավ Հայաստանի թագը և (այդ) վայրը իր անունով կոչեց Տիգրանակերտ և կամ՝ Տիգրանապոլիս[16]:*

*83. (Լուկուլլոսը) բարեկամություն հաստատեց Միհրդատի որդի*

*Մաքարեսի հետ, որը թագավորում էր Բոսֆորում և իրեն ուղարկել էր ոսկե պսակ, ապա Տիգրանից պահանջեց Միհրդատին: Եվ վերադառնալով Ասիա... հաղթանակի առթիվ զոհաբերման տոնախմբություններ կատարեց, իբրև թե պատերազմը ավարտվել էր հաղթական:*

*84. Զոհեր մատուցելուց հետո նա երկու ընտիր լեգեոններով և 500 հեծյալներով արշավեց Տիգրանի վրա[17]: Անցնելով Եփրատը, նա բարբարոսներից, որոնց երկրով անցնում էր[18], պահանջում էր միայն այն, ինչ անհրաժեշտ էր, քանի որ նրանք չէին կռվում և ոչ էլ ուզում էին որևէ բանով տուժել, այլ թողնում էին, որ Լուկուլլոսը և Տիգրանը իրենք լուծեն իրենց վեճը: Տիգրանին ոչ ոք չէր հաղորդում Լուկուլլոսի մոտենալու մասին: Քանզի առաջին իսկ մարդը, որն ասել էր այդ մասին, կախաղան էր հանվել նրա կողմից, որովհետև նա կարծում էր, որ այդ մարդը խուճապ էր առաջացնում քաղաքներում: Բայց երբ արդեն Տիգրանն իմացավ (այդ մասին), Մեհրուժանին[19] երկու հազար հեծյալներով ուղարկեց առաջ, որպեսզի փակի Լուկուլլոսի ճանապարհը: Իսկ Մանկայոսին[20] հանձնարարեց պաշտպանել Տիգրանակերտը. այն քաղաքը, որը, ինչպես նախապես ասել եմ, թագավորն իր պատվին կառուցել էր այդ վայրում, և (երկրի) լավագույններին կանչում էր այնտեղ, սպառնալով, որ այն ինչ չեն բերի իրենց հետ, կբռնագրավվի: Նա քաղաքը շրջապատեց 50 կանգուն բարձրության պարիսպով[21], որի հաստության մեջ կային ձիերի բազմաթիվ ախոռներ: Քաղաքի արվարձանում նա կառուցեց պալատ, ընդարձակ զբոսայգիներով, որսատեղերով և լճերով: Մերձակայքում նա բարձրացրեց նաև հզոր մի բերդ: Այս ամենը Մանկայոսին հանձնելով՝ ինքը շրջում էր երկիրը զորք հավաքելու նպատակով: Լուկուլլոսը Մեհրուժանին, առաջին իսկ բախումից հետո, հաղթեց և փախուստի մատնեց: Իսկ Սեքստիլիոսը, Մանկայոսին, Տիգրանակերտում փակելուց հետո, կողոպտեց արքունի պալատը, որը պարսպապատ չէր, քաղաքի և բերդի շուրջ խանդակ փորեց, (պաշարողական) մեքենաներ պատրաստեց և պարսպի տակ ականներ փորեց:*

*85. Մինչ Սեքստիլիոսը զբաղված էր այս գործերով, Տիգրանը հավաքելով մոտ 25 բյուր հետևակ և 5 բյուր հեծյալ, նախ նրանցից մոտ 6000-ին ուղարկեց Տիգրանակերտ, որոնք հռոմեացիների միջով մտնելով բերդ, այնտեղից խլեցին ու դուրս բերեցին թագավորի հարճերին: Իսկ զորքի մնացած մասով ինքը՝ Տիգրանը շարժվեց Լուկուլլոսի վրա: Այնժամ Միհրդատը առաջին անգամ գալով նրան տեսության, խորհուրդ տվեց կռվի չբռնվել հռոմեացիների հետ, այլ միայն*

*հեծելազորով արշավել նրանց չուրջը և, ավերելով երկիրը, եթե հնարավոր է, նրանց սովի մատնել, ինչպես և ինքը Լուկուլլոսի կողմից Կյուզիկոսի[22] մոտ առանց կռվի ուժասպառ էր եղել և կորցրել իր զորքը: Իսկ Տիգրանը ծաղրելով Միհրդատի այդ ռազմավարությունը, առաջ է շարժվում, պատրաստ կռվելու: Տեսնելով, որ հռոմեացիները սակավաթիվ են, նա այսպես հեգնեց. «Եթե սրանք դեսպաններ են, շատ են, իսկ եթե թշնամի՝ հույժ սակավ»: Լուկուլլոսը, Տիգրանի թիկունքում հարմար մի բլուր նկատելով, իր հեծյալներին հրամայեց թշնամուն անհանգստացնել ճակատից, նրան քաշել իրենց կողմը և կամովին ետ նահանջել, որպեսզի հետապնդող բարբարոսների շարքերը քայքայվեն: Իսկ ինքը հետևակի հետ անցնելով (թշնամու) թիկունքը, աննկատ բարձրացավ բլուրը: Եվ երբ նա տեսավ, որ թշնամին (հեծելազորը) հալածելիս իբր թե հաղթած լինելով՝ շատ էր ցրվել, իսկ նրա ամբողջ գումակը գտնվում էր ներքևում, գոչեց. «Զինվորնե՛ր, մենք հաղթում ենք» և առաջինը ինքը վազելով հարձակվեց գումակի վրա: Գումակն իսկույն աղմկալից փախչելով, ընկավ հետևակի վրա. իսկ հետևակը՝ հեծելազորի: Շուտով պարտությունը եղավ լիակատար, որովհետև արդեն հռոմեացի հեծյալները ետ դարձան ու կոտորեցին նրանց, որոնք հետապնդելիս ցրվել էին հեռուները, իսկ գումակը խուճապի մատնված՝ ընկնում էր մյուսների վրա: Եվ այդ ամբոխի մեջ իրար էին կոխոտում առանց ճշգրիտ իմանալու, թե որտեղի՞ց էր սկսվել նրանց համար այդ արհավիրքը: Մեծ եղավ կոտորածը, քանի որ ոչ ոք կողոպուտով չէր զբաղվում, Լուկուլլոսը սպառնալով արգելել էր այս, ուստի և ապարանջաններն ու մանյակներն իսկ թողնելով, նրանք չարունակում էին սպանել մոտ 120 ասպարեզի վրա, մինչև գիշերը վրա հասնելը: Միայն դրանից հետո նրանք վերադարձան և սկսեցին կողոպտել, քանի որ Լուկուլլոսը արդեն այդ թույլ էր տվել:*

*86. Մանկայոսը Տիգրանակերտից տեսնելով այդ պարտությունը, կասկածելով հելլենների վրա, որոնք նրա մոտ վարձկաններ էին, բոլորին զինաթափեց: Սրանք ձերբակալումից վախենալով՝ բրերով զինված գնացին և բանակեցին բացօթյա: Երբ Մանկայոսը նրանց դեմ հանեց զինված բարբարոսների, նրանք իրենց զգեստները վահանների փոխարեն կապկպելով ձախ ձեռքներին՝ խիզախաբար վազեցին նրանց վրա: Եվ ում որ սպանում էին, իսկույն բաժանում էին նրա զենքերն իրար միջև: Երբ, այսպիսով, նրանք հնարավորին չափ իրենց բավարարեցին (զենքով), գրավեցին միջաշտարակային մի քանի մասեր և դրսից հռոմեացիներին կանչելով, բարձրացողներին ներս*

*Թողեցին: Այսպես գրավվեց Տիգրանակերտը և կողոպտվեց մեծ հարստություն, ինչպիսին կլիներ նորակառույց և փառասիրությամբ բնակեցված քաղաքում:*

*87. Տիգրանը և Միհրդատը շրջելով երկիրը՝ հավաքում էին նոր բանակ, որի հրամանատարությունը հանձնվեց Միհրդատին, քանի որ Տիգրանը մտածում էր, որ նրա կրած անհաջողությունները դաս եղած կլինեն: Նրանք նաև դեսպաններ ուղարկեցին Պարթև թագավորի[23] մոտ, նրանից օգնություն խնդրելով: Նրանց հակառակ՝ Լուկուլլոսը ևս դեսպաններ ուղարկեց, պահանջելով կամ դաշնակցել իր հետ, կամ չեզոք մնալ: Իսկ Պարթևը երկուսի հետ էլ գաղտնի դաշն կնքեց, բայց ոչ մեկին չօգնեց: Մինչդեռ Միհրդատը ամեն քաղաքում զենք էր պատրաստում և զինվորագրում գրեթե բոլոր հայերին: Նրանցից ընտրեց լավագույններին, շուրջ 7 բյուր հետևակ և դրա կեսի չափ հեծյալների, մնացյալին ազատ արձակեց: (Ընտրվածներին) նա բաժանեց ջոկատների և վաշտերի, հռոմեական զորքերի նման, և հանձնեց պոնտացի զինվորականներին, նրանց վարժեցնելու համար: Երբ Լուկուլլոսը շարժվեց նրանց դեմ, Միհրդատը ամբողջ հետևակով և հեծելազորով մի մասով ամրացել էր բլրի վրա, իսկ Տիգրանը մնացյալ հեծյալներով հարձակվեց պարեն հավաքող հռոմեացիների վրա, բայց պարտվեց: Դրանից հետո հռոմեացիները առավել աներկյուղ պարեն էին հավաքում և բանակեցին իրեն իսկ՝ Միհրդատին մոտիկ: Ու դարձյալ մեծ փոշի բարձրացավ, ազդարարելով Տիգրանի մոտենալը: Ծրագիրն այն էր, որ Լուկուլլոսը մնար երկու թագավորների միջև: Բայց Լուկուլլոսը այդ զգալով, իր լավագույն հեծյալներին ուղարկեց բավական առաջ, Տիգրանի հետ կռվի բռնվելու և խանգարելու նրան, որպեսզի ճանապարհի ընթացքից չկարողանա մարտական կարգ հաստատել: Իսկ ինքը Միհրդատի շուրջ խրամատներ փորելով նրան մարտի էր դրդում, բայց չկարողացավ գրգռել մինչև որ ձմեռը վրա հասավ և բոլորի գործը խանգարեց:*

*88. Արդ, Տիգրանը քաշվեց Հայաստանի ներքին մասերը, իսկ Միհրդատը գնաց Պոնտոսի իր թագավորության մնացած մասերը, իր հետ ունենալով 4000 յուրայինների և նույնքան էլ Տիգրանից ստանալով:*

*104. Պոմպեոսը արշավեց Հայաստան, պատճառ բռնելով, թե Տիգրանը օգնել է Միհրդատին: Եվ արդեն նա մոտեցել էր արքայանիստ Արտաշատին: Տիգրանը որոշել էր այլևս չպատերազմել: Նա Միհրդատի դստրից ունեցել էր երեք որդի, որոնցից երկուսին սպանել էր ինքը՝ Տիգրանը, մեկին պատերազմում, երբ (որդին) կռվել էր իր դեմ,*

*մյուսին՝ որսի ժամանակ, քանի որ սա, երբ Տիգրանն ընկել էր, հոգատար չէր եղել, այլ, մինչդեռ հայրը պառկած վիճակում էր, թագը դրել էր իր գլխին[24]: Իսկ երրորդը՝ Տիգրանը, որը որսի ժամանակ չատ էր անհանգստացել իր հոր համար, թագ էր ստացել նրանից, այսուհանդերձ, քիչ ժամանակ անց սա ևս ապստամբելով՝ հեռացավ, պատերազմեց հոր դեմ և պարտվելով[25], ապաստանեց պարթևների թագավոր Փրաատի[26] մոտ, որը նոր էր ժառանգել իր հոր՝ Սինտրիկոսի[27], իշխանությունը: Երբ Պոմպեոսն արդեն մոտեցել էր, որդին Փրաատի հետ խորհրդակցելով, ստացավ նրա համաձայնությունը ևս, քանի որ Փրաատը նույնպես ձգտում էր Պոմպեոսի բարեկամությանը, ապաստանեց Պոմպեոսի մոտ իբրև խնդրարկու, մանավանդ որ ինքը Միհրդատի թոռն էր: Բայց Պոմպեոսի արդարամտությունը և հավատարմությունը մեծ համբավ ուներ բարբարոսների մոտ, ուստի և հայր Տիգրանը ևս, հուսալով այդ բանին, առանց նախապես լրատար ուղարկելու, գնաց նրա մոտ: Սա ամբողջապես իրեն վստահելով Պոմպեոսի արդարամտությանը՝ ուզում էր մեղադրել որդուն Պոմպեոսի առաջ: Երբ Պոմպեոսը, ի պատիվ նրա, հրամայեց իր տրիբուններին և հեծելապետերին գնալ նրան դիմավորելու, Տիգրանի հետ եղողները ճանապարհին վախեցան և ետ փախան, քանի որ գնում էին առանց նախապես լրատարի միջոցով հայտնելու: Բայց Տիգրանը եկավ և, Պոմպեոսին առավել հզոր համարելով, բարբարոսական ձևով երկրպագեց: Կան նաև ասողներ, որ Տիգրանին, որը նախապես հրավիրված է եղել Պոմպեոսի կողմից, առաջնորդել են լիկտորները[28]: Ինչևէ, գալով Պոմպեոսի մոտ, (Տիգրանը) բացատրվեց կատարված դեպքերի համար և տվեց իրեն՝ Պոմպեոսին, 6000 տաղանդ[29], զինվորներից յուրաքանչյուրին՝ 50 դրաքմե, (յուրաքանչյուր) վաշտապետին՝ հազար, իսկ (յուրաքանչյուր) տրիբունին՝ 10 հազար (դրաքմե)[30]:*

*105. Պոմպեոսը ներեց նրան կատարված դեպքերի համար, հաշտեցրեց որդու հետ և որոշեց, որ որդին իշխի Ծոփքի և Կորդուքի վրա, որոնք այժմ կազմում են Փոքրագույն Հայաստանը, իսկ հայրը՝ մյուս Հայաստանի վրա, և որ տղան պետք է լինի ժառանգորդը: Իսկ նրա նվաճած երկրները պետք է վերադարձվեն: Եվ Տիգրանը թողեց Ասորիքը, Եփրատ գետից սկսած մինչև ծովը. քանզի Տիգրանը նվաճել էր այդ երկիրը և Կիլիկիայի մի մասը, այդ երկրից դուրս քշելով Եվսեբես մականվանյալ Անտիոքոսին: Հայերից նրանք, ովքեր լքել էին Տիգրանին Պոմպեոսի մոտ գնալիս, քանի որ կասկածում էին վերջինիս վրա, որդուն, որը դեռևս Պոմպեոսի մոտ էր, համոզում են հար-*

*ձակվել Հոր վրա: Բայց քանի որ նա մինչև այդ փորձել էր պարթևնե-րին ոտքի հանել Պոմպեոսի դեմ, ձերբակալվեց, շղթայակապ արվեց, տարվեց նրա հաղթահանդեսին ու (հետագայում) սպանվեց[31]:*

*1. Խոսքը վերաբերում է Արտաշես I-ի որդիներից Տիգրանին (Տիրան), որն իր ավագ եղբոր՝ Արտավազդ I-ի մահից հետո հռչակվեց Հայաստանի թագավոր: Նա հայրն էր Տիգրան II Մեծի:*

*2. Սա Սելևկյան տերության թագավոր Անտիոքոս X Եվսեբեսն է (95-92): Սակայն, այս իրադարձությունների ժամանակ Անտիոքոս Եվսեբեսն արդեն վաղուց սպանված էր և պայքարը Տիգրան II-ի դեմ գլխավորում էր նրա խորթ մայրն ու կինը՝ Սելենե-Կլեոպատրան:*

*3.* ***Մագաղատես*** *(Բագաղատես) - սա Ասորիքի հայկական կուսակալ Բա - գարատն է, Տիգրան II-ի մերձավորներից մեկը: Ուսումնասիրողները, իրավամբ, այս Բագարատին համարում են Բագրատունիների տոհմի ներկայացուցիչ:*

*4. Այսինքն՝ ըստ Ապպիանոսի, Տիգրան Մեծի իշխանությունը Ասորիքում տևել է ընդամենը 14 տարի՝ 83-69 թվականները, իսկ Տրոգոս-Հուստինոսի համաձայն՝ 83-ից մինչև 66 թվականը, այսինքն՝ 17 տարի (տե՛ս 318-րդ էջ, ծան. № 9):*

*5. Խոսքը Անտիոքոս X Եվսեբեսի և Սելենե-Կլեոպատրայի որդու՝ Անտիոքոս XIII Ասիացու (68-64) մասին է, որը Լուկուլլոսի հովանավորությամբ թագավոր էր հռչակվել Ասորիքում:*

*6. Խոսքը Սելևկյան թագավոր Անտիոքոս IV Էպիփանեսի (175-164) մասին է:*

*7. Նկատի ունի Մեծ Հայքի թագավոր Արտաշես I-ին: Ապպիանոսի սույն վկայության համաձայն, ինչպես տեսնում ենք, հայ-սելևկյան այս պատերազմը (մոտ Ք. ա. 165 թ.) ավարտվել է հայերի պարտությամբ, սակայն իրականում Արտաշես I-ը ետ է մղել սելևկյան զորքերի հարձակումը (տե՛ս նաև 301-րդ էջ, ծան. № 6):*

*8. Անտիոքոս IV-ը Եգիպտոս է արշավել երկու անգամ՝ 169 և 168 թվականներին:*

*9. Նկատի ունի Եգիպտոսի թագավոր Պտղոմեոս VI Փիլոմետորին (180-145):*

*10. Խոսքը Սելևկյան թագավոր Անտիոքոս VIII Գրյուպոսի (125-96) մասին է:*

*11. Նկատի ունի Սելևկոս VI-ին (96-95):*

*12. Խոսքը Անտիոքոս IX Կիզիկացու (114-95) մասին է: Սա կրտսեր եղբայրն էր Անտիոքոս VIII-ի:*

*13. Ապպիանոսն այստեղ նկատի ունի Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորին:*

*14. Խոսքը Պարթևստանի թագավոր Միհրդատ II-ի (դինաստիական անունով Արշակ IX՝ 123-87) մասին է, որն ամուսնացած էր Տիգրան II-ի դուստր Ավտոմա-Արիազատեի հետ:*

*15. Հայկական զորքը արշավանքներ է ձեռնարկել դեպի Կապադովկիա 93, 91, 74 և այլ թվականներին: Այստեղ խոսքը 74 թ. արշավանքի մասին է:*

*16. Տիգրանակերտը տեղադրվում է Աղձնիք նահանգում՝ Տիգրիսի ձախակողմյան վտակներից մեկի՝ Նիկեփորիոնի (Ֆարկին-սու) հովտում:*

*17. Ք. ա. I դարի վերջերին լեգեոնում հաշվում էր 7 հազար զինվոր, հետևաբար, ըստ Ապպիանոսի, դեպի Հայաստան արշավող Լուկուլլոսի բանակն ուներ ընդամենը 14.500 զինվոր, որն, անշուշտ, ճիշտ չէ (այդ մասին տե՛ս նաև 342-րդ էջ, ծան. № 26):*

*18.Պլուտարքոսի մի վկայությունից հայտնի է, որ Լուկուլլոսը Հայաստան է ներխուժել Ծոփքի վրայով:*

*19. Տե՛ս 342-րդ էջ, ծան. № 21:*

*20.* ***Մանկայոս*** *(Մամկայոս) - հայ մեծատոհմիկ, Տիգրանակերտի վերակացուն: Ուսումնասիրողները սրան համարում են Մամիկոնյան տոհմի ներկայացուցիչ:*

*21. 50 կանգունը հավասար է մոտ 25 մետրի:*

*22. Նավահանգստային քաղաք Մարմարա ծովի ափին, որտեղ 72 թ. Միհրդատը ծանր պարտություն էր կրել Լուկուլլոսից:*

*23. Ապպիանոսը նկատի ունի Պարթևստանի թագավոր Հրահատ III-ին (70-57):*

*24. Միհրդատ Եվպատորի դուստր Կլեոպատրայի և Տիգրան Մեծի ավագ որդին այլ աղբյուրներից հայտնի Զարեհն էր, երկրորդ որդու անունը չի պահպանվել:*

*25. Տիգրան Կրտսերի ապստամբությունը բռնկվել էր 67 թվականին:*

*26. Նկատի ունի Հրահատ III-ին: Տիգրան Կրտսերն ամուսնացած էր սրա դստեր հետ:*

*27. Խոսքը Հրահատ III-ի հոր՝ Պարթևստանի թագավոր Սանատրուկի (76-70) մասին է:*

*28. Տե՛ս 358-րդ էջ, ծան. № 5:*

*29. Տե՛ս 358-րդ էջ, ծան. № 6:*

*30. Հանրապետական Հռոմի դրաքմեն հավասար էր մոտ 35 ռուսական ոսկի կոպեկի:*

*31. Տե՛ս 358-րդ էջ, ծան. № 11:*

## ՄԵՄՆՈՆԸ ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

***Ք. ա. I դարի Հայաստանի քաղաքական պատմության, հայ-պոնտական, հայ-հռոմեական հարաբերությունների, Լուկուլլոսի դեպի Հայաստան կատարած արշավանքի և հարակից այլ հարցերի մասին***

արժեքավոր տեղեկություններ է հաղորդում Մեմնոն Հերակլեացին:

Մեմնոնի մասին մեր գիտելիքները սուղ են: Անգամ նրա ժամանակաշրջանը հայտնի չէ, միայն ենթադրվում է, որ ապրել Ք. հ. II դարում: Հայտնի է, որ նա ծնվել ու ապրել է Պոնտական Հերակլեա քաղաքում և զբաղվել է մատենագրությամբ, գրել պատմական երկասիրություններ:

Մեմնոնից մեզ հասած միակ երկը նվիրված է նրա հայրենի քաղաքի պատմությանը, որը հենց այդպես էլ խորագրված է՝ «Պոնտական Հերակլեայի պատմություն»: Դժբախտաբար, Մեմնոնի սույն գրվածքը ամբողջությամբ չի պահպանվել, մեզ են հասել միայն նրա առանձին բեկորները: Մեմնոնի վկայությունները՝ պատմական այս կամ այն անցքի վերաբերյալ, հիմնականում վստահելի են ու արժանահավատ, քանի որ նա պատկանում է փոքրասիրական չեզոք հույն հեղինակների խմբին և Հռոմի նկատմամբ չունի այն չեչտված աչառու մոտեցումը, ինչ նկատվում է հռոմեասեր հույն և լատին հեղինակների մոտ:

Մեմնոնից ստորև բերված հատվածները տալիս ենք ըստ Հ. Հ. Մանանդյանի թարգմանության, որը կատարված է «Memnonis, Historiarum Heracleae Ponti, edid. C. Orellius, Lipsiae, 1896» հրատարակությունից:

## ՄԵՄՆՈՆ

## ՊՈՆՏԱԿԱՆ ՀԵՐԱԿԼԵԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### Գիրք XV

XLIII. (2) Միհրդատը ուղարկեց դեսպաններ Սկյութացոց թագավորների, Պարթևաց թագավորի և իր փեսա Տիգրան Հայի մոտ[1]: Սակայն առաջիններից նա ստացավ մերժում, իսկ Տիգրանը, որին չարունակ անհանգստացնում էր ու աղերսալից խնդրում Միհրդատի դուստրը[2], վերջիվերջո խոստացավ օգնել:

XLVI. (2) Լուկուլլոսը ուղարկել էր Տիգրանի մոտ իբրև դեսպան՝ Ապպիոս Կլավդիոսին և պահանջում էր իրեն հանձնել Միհրդատին[3]: Սակայն Տիգրանը չտվեց, ասելով, որ բոլոր մարդիկ իրեն կպախարակեն, եթե նա Լուկուլլոսի ձեռքը հանձնի իր կնոջ հորը: Թե ինչպիսի վատ մարդ է Միհրդատը, այդ ինքն էլ գիտի, սակայն խայտառակ կլինի իր ազգականության առջև: (3) Նա նաև նամակ է

*գրում Լուկուլլոսին, որ բովանդակում էր իր մեջ նրա ասած այդ խոսքերը, որը գայրացրեց վերջինիս, քանզի նա (Տիգրանը) իրեն չէր անվանել իմպերատոր՝ հանդիմանելով նրան այն բանի համար, որ նա (Լուկուլլոսը) նամակներում իրեն չէր անվանել արքայից արքա:*

## *Գիրք XVI*

*LV. Միհրդատը, մնալով մեկ տարի և ութ ամիս Հայաստանի կողմերում՝ դեռևս չէր ներկայացել և չէր տեսնվել Տիգրանի հետ: Եվ երբ Տիգրանը, անհարմար զգալով, խնդրեց, որ Միհրդատն իրեն տեսության գա, նա նրան ընդունեց շուքով և արժանի արեց թագավորական պատիվների*[4]*: Մոտ երեք օր նա գաղտնի խորհրդակցություն ունեցավ Միհրդատի հետ և ապա բարեկամաբար նրան պարգևեց փարթամ զգեստներ, տվեց տասը հազար հեծելազոր և ուղարկեց Պոնտոս:*

*LVI. (2) Երբ Հայաստանը շատ կողմերից այսպես պաշարված էր՝ Տիգրանը մարդ ուղարկեց և իր մոտ հրավիրեց Միհրդատին: Նա (Տիգրանը) նույնպես զորք ուղարկեց Տիգրանակերտ քաղաքը, որի մեջ գտնվում էր նրա (Տիգրանի) կանանոցը: Սրանք գալով այնտեղ և նետաձգությամբ կտրելով հռոմեական ճամբարից դուրս գալու ճանապարհը՝ դուրս բերին գիշերով նախապես Տիգրանի կանանոցն ու թանկագին ամենաարժեքավոր իրերը: Իսկ լուսաբացին հռոմեացիները և նրանց հետ նաև թրակիացիները արիաբար կռվեցին, հայերից շատերին սպանեցին և կենդանի բռնվածներից շատերին էլ գերի վերցրին: Սակայն այն, ինչ որ նախապես ուղարկված էր՝ փրկվեց ու հանձնվեց Տիգրանին:*

*LVII. (1) Սա (Տիգրանը), հավաքելով 80 հազար զորք*[5]*, իջավ ցած, որպեսզի հարստահարիչների ձեռքից փրկի Տիգրանակերտը և թշնամիներին հեռացնի: Կամենալով այդ չուտ վերջացնել և տեսնելով, որ հռոմեացիների զորաբանակը սակավաթիվ է՝ նա ասաց. «Եթե նրանք ուզում են որպես դեսպաններ ներկայանալ՝ մեծ բազմությամբ են եկել, իսկ եթե որպես թշնամիներ են եկել՝ չափազանց քիչ են»: Եվ այդ ասելուց հետո՝ նա բանակ դրեց: (2) Իսկ Լուկուլլոսը վարպետությամբ ու հոգացողությամբ ճակատամարտի համար մարտակարգ կազմեց և, քաջալերելով իր զորքը՝ խսկույն փախուստի մատնեց աջ թևը, հետո սրա միջոցով ետ մղեց հարևան զորքը և ապա հերթով՝ ամբողջ զորքը: Հայերն ահաբեկված ու անզուսպ կերպով դիմեցին փախուստի և մարդկանց թվի համեմատ էր նաև նրանց կոտորածը: Իսկ Տիգրանն իր արքայական խույրը և ապարոշը տվեց որդուն և ին-*

քը փախավ իր ամրոցներից մեկը:

Բայց Լուկուլլոսը, վերադառնալով Տիգրանակերտ, պաշարեց քաղաքն ավելի համարձակորեն: Իսկ քաղաքում գտնվող Միհրդատի զորավարները, որ բոլորովին հուսահատվել էին, իրենց փրկելու համար քաղաքը հանձնեցին Լուկուլլոսին[6]:



Տիգրան II Մեծ

1. Ըստ երևույթին, Միհրդատ Եվպատորը, օգնության խնդրանքով, իր դեսպաններին նշված երկրներն էր ուղարկել 72 թ. Կիզիկոս քաղաքի տակ հռոմեացիներից կրած ծանր պարտությունից հետո:

2. Մեմնոնը նկատի ունի Միհրդատ Եվպատորի դուստր Կլեոպատրային, որը Տիգրան Մեծի կինն էր:

3. Միհրդատը Հայաստան էր ապաստանել 71 թ. Կաբիրայի ճակատամարտում հռոմեացիներից կրած վճռական պարտությունից հետո:

4. Տիգրանի և Միհրդատի այս տեսակցությունը, ըստ Հ. Մանանդյանի, տեղի է ունեցել 69 թ. գարնան վերջերին կամ ամռանը, երբ արդեն սկսվել էր հայ-հռոմեական պատերազմը և Լուկուլլոսն էլ շրջափակել էր Տիգրանակերտը:

5. Մեմնոնի սույն վկայությունը խիստ կարևոր է Տիգրանակերտի ճակատամարտին մասնակցած հայկական զորքերի քանակությունը որոշելու համար: Եթե Պլուտարքոսն ու Ապպիանոսը խոսում են 300 հազար, ապա Մեմնոնը՝ 80 հազար, իսկ Փլեգոնը՝ 70 հազար մարտիկների մասին: Այս վերջին երկու պատմագիրները չեզոք են, հետևաբար՝ առավել վստահելի, քան Լուկուլլոսին ներբողներ հյուսող Պլուտարքոսը:

6. Այստեղից ակներև է, որ Լուկուլլոսը Տիգրանակերտը գրավել է ոչ թե ռազ -

*մական գործողությունների շնորհիվ, այլ դավաճանության: Քաղաքը նրան էր հանձնվել օտարերկրացիների դավադրության միջոցով (տե՛ս նաև **Դիոն Կասսիոս**, Հռոմեական պատմություն, XXXVI, 2; **Ապպիանոս**, Միհրդատական, 86):*

## ՏԻԳՐԱՆ ՄԵԾԻ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՊՈՄՊԵՈՍԻ ՀԵՏ ԸՍՏ ՊԼՈՒՏԱՐՔՈՍԻ

### *ՊԼՈՒՏԱՐՔՈՍ*

### *ԶՈՒԳԱՀԵՌ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

#### ՊՈՄՊԵՈՍ

*32. ... Այստեղից[1] Միհրդատը մեկնեց Հայաստան, Տիգրանի մոտ: Բայց քանի որ մերժեց նրան ապաստան տալ և անգամ հարյուր տաղանդ[2] պարգև խոստացավ նրա գլխի համար, Միհրդատը, շրջանցելով Եփրատի ակունքները, շարունակեց փախչել Կողքիսի միջով:*

*33. Այդ ընթացքում[3] Պոմպեոսը ներխուժեց Հայաստան, որտեղ նրան հրավիրել էր Տիգրան Կրտսերը: Վերջինս արդեն ապստամբել էր[4] իր հոր դեմ և Պոմպեոսին դիմավորեց Արաքս գետի մոտ: Այս գետն սկսվում է ճիշտ նույն տեղից, ինչ և Եփրատը, բայց, թեքվելով դեպի արևելք, թափվում է Կասպից ծով: Պոմպեոսն ու երիտասարդ Տիգրանը առաջ*



**Գնեոս Պոմպեոս**

*էին գնում, գրավելով իրենց ճանապարհին գտնված քաղաքները: Սակայն Տիգրան Թագավորը, որը նորերս պարտվել էր Լուկուլլոսից, տեղեկանալով, որ Պոմպեոսը մեղմ ու բարի բնավորություն ունի, հռոմեական պահգորային ջոկատը ներս թողեց իր պալատը, իսկ ինքը, ընկերների և ազգականների ուղեկցությամբ, մեկնեց Պոմպեոսի մոտ, նրան հանձնվելու համար: Երբ նա ձի հեծած հասավ ճամբար, Պոմպեոսի երկու լիկտոր5 մոտենալով նրան, կարգադրեցին իջնել ձիուց և գնալ հետիոտն, քանի որ երբեք չեն տեսել, որ որևէ մեկը հեծյալ մտնի հռոմեական ճամբար: Տիգրանը ենթարկվեց և անգամ հանելով իր սուրը, այն հանձնեց նրանց: Ի վերջո, երբ արքան ներկայացավ Պոմպեոսին, հանեց իր խույրը, այն զորավարի ոտքերի առաջ դնելու մտադրությամբ և, ինչը առավել ամոթալի էր, ուզեց նրա առաջ ծնրադրել: Պոմպեոսը, սակայն, կանխեց նրան, բռնեց արքայի աջը և նրան քաշեց դեպի իրեն: Հետո նստեցրեց իր կողքին, իսկ որդուն՝ մյուս կողքին: Նա արքային հայտարարեց, որ նրա նախկին բոլոր դժբախտությունների համար մեղավոր է Լուկուլլոսը, որը նրանից վերցրել է Ասորիքը, Փյունիկիան, Կիլիկիան, Գալատիան և Սոփենեն: Իսկ այն հողերը, որոնք դեռ մնացել են իրեն, թող ինքը տիրի, հռոմայեցիներին հասցրած վիրավորանքի համար նրանց վճարելով ութ հազար տաղանդ[6], իսկ Սոփենեում կթագավորի նրա որդին: Տիգրանն այս պայմանները սիրով ընդունեց, և այնժամ հռոմայեցիները նրան արքայավայել ողջունեցին. իսկ Տիգրանը, արտակարգ ուրախացած, խոստացավ յուրաքանչյուր զինվորին տալ կես մինա[7] արծաթ, կենտուրիոնին՝ տասը մինա[8], տրիբունին՝ մեկ տաղանդ[9]: Որդին, ընդհակառակը, խիստ դժգոհեց և, երբ նրան հրավիրեցին հյուրասիրության, հայտարարեց, թե ինքը Պոմպեոսի կողմից նման պատիվների կարիքը չունի, քանի որ կարող էր իր համար այլ հռոմայեցու ճարել[10]: Այնժամ Պոմպեոսը հրամայեց շղթայել նրան և պահել բանտում, հաղթահանդեսի համար[11]: Քիչ ժամանակ անց Փրաատեսը, պարթևաց արքան[12], դեսպաններ ուղարկեց Պոմպեոսի մոտ, պահանջելով կրտսեր Տիգրանին, որպես իր փեսայի, հանձնել իրեն, միաժամանակ երկու տերությունների սահման ճանաչել Եփրատը: Պոմպեոսը պատասխանեց, թե Տիգրանը ավելի մոտ ազգական է իր հորը, քան աներոջը, իսկ ինչ վերաբերում է սահմանին, ապա այն կհաստատվի արդար կերպով:*

*1. Վճռական ճակատամարտը Պոմպեոսի և Միհրդատ Եվպատորի միջև տեղի է ունեցել Ք. ա. 66 թ. ամռան սկզբներին՝ Գայլ գետից դեպի հարավ, Էնդերե -*

*սից մոտ 10 կմ հեռավորության վրա գտնվող այժմյան Պյուրկի մոտ։ Այստեղից Միհրդատը փոքրաթիվ ուղեկիցներով փախավ Մեծ Հայքին սահմանամերձ Սինորիա ամրոցը՝ Աշկալայից մոտ 15 կմ դեպի հյուսիս-արևմուտք։ Տվյալ հատվածում Պլուտարքոսը նկատի ունի հենց այս Սինորիա ամրոցը։*

*2. Մոտավորապես 210.000 ռուսական ոսկի ռուբլի։*

*3. Պոմպեոսը Հայաստան ներխուժեց 66 Թ. կեսերին։*

*4. Տիգրան Կրտսերի ապստամբությունը տեղի է ունեցել 67 թվականին։*



**Ցիցերոն**

*5. Հին Հռոմում մականակիրներ (լիկտոր) էին կոչվում բարձրաստիճան պաշտոնյայի առջևից գնացող հատուկ անձինք, որոնք իբրև իշխանության տարբերանշան, տանում էին ձողիկների մի կապոց, ծայրին կացին ամրացրած։*

*6. Այստեղ ակնհայտ թյուրիմացություն է. Պլուտարքոսի բնագրում, ինչպես նաև Ապպիանոսի ու Ստրաբոնի մոտ նշված է վեց հազար տաղանդ, այսինքն՝ մոտավորապես 12,5 միլիոն ոսկի ռուբլի։*

*7. Մոտավորապես 17,2 ոսկի ռուբլի։*

*8. 350 ոսկի ռուբլի։*

*9. 2100 ոսկի ռուբլի։*

*10. Արտաշատի հաշտության պայմանագրից Տիգրան Կրտսերի դժգոհության պատճառներից մեկն էլ այն էր, որ Հայաստանից գանձվող ռազմատուգանքը Տիգրան Մեծը վճարեց Ծոփքում գտնվող արքայական գանձարաններից։*

*11. Պոմպեոսը Տիգրան Կրտսերին, նրա կնոջն ու դստերը, ինչպես նաև Տիգրան Մեծի կնոջը՝ Զոսիմային, ցուցադրեց 61 Թ. սեպտեմբերին Հռոմում կազմակերպված իր հաղթահանդեսի ժամանակ։ Տիգրան Կրտսերը հռոմեական բանտում մնաց մինչև 58 թվականը, երբ Հռոմում կաշառակերությամբ հայտնի ժողովրդական տրիբուն Կլոդիոսը ինքնակամ նրան ազատեց կալանքից։ Սակայն քիչ անց, Տիգրան Կրտսերը մահապատժի ենթարկվեց Պոմպեոսի կարգադրությամբ։*

*12. Խոսքը պարթևաց Հրահատ III թագավորի մասին է։*

## ՄԱՐԿՈՍ ՏՈՒԼԻՈՍ ԿԻԿԵՐՈՆԸ (ՑԻՑԵՐՈՆ)

## ՏԻԳՐԱՆ ՄԵԾԻ ՄԱՍԻՆ

*Մարկոս Կիկերոնը (106–43) հռոմեական խոշորագույն մտածող, փիլիսոփա, սենատական ավագանու (նոբիլիտետի) քաղաքական առաջնորդներից էր։ Կիկերոնի դատավարական և քաղաքական ճառերը, նամականին, փիլիսոփայական ու բարոյախոսական աշխատությունները Հռոմում քաղաքական պայքարի և արտաքին հարաբերությունների վերաբերյալ արժեքավորագույն աղբյուրներ են։ Նրա «Գնեոս Պոմպեոսի գերագույն հրամանատարության մասին», «Ի պաշտպանություն Պուբլիոս Սեստիոսի», «Ընդդեմ Գայոս Վեռեսի» ճառերը բովանդակում են Տիգրան Մեծի արտաքին քաղաքականության մասին կարևոր դիտարկումներ և տվյալներ։ Դրանք վճռորոշ են Տիգրան Մեծի արտաքին քաղաքականություն հարցերի լուսաբանման համար։ Տիգրան Մեծի մասին Կիկերոնի տվյալները միակ վավերագրերն են, որոնք մեզ են հասել հենց տիգրանյան ժամանակաշրջանից, ուստի և ունեն առաջնային սկզբնաղբյուրային նշանակություն։*

*Ք. ա. 71 թ. Միհրդատ Պոնտացու նկատմամբ Տիգրան Մեծի դիրքորոշմանը, նրան ապաստան տալու հակահռոմեական ուղղվածությանը, տվյալ քայլի հակահռոմեական բնույթին (և այդ հանգամանքի քաջ գիտակցմանը Հռոմում) Կիկերոնն անդրադառնում է Ք. ա. 66 թ. հունվարին արտասանած «Գնեոս Պոմպեոսի գերագույն հրամանատարության մասին»* (**Cicero**, Oratio de imperio Cn. Pompeii, 9, 23 – **Cicéron**, Discours, t. VII, Paris, 1950) *և Ք. ա. 56 թ. մարտին արտասանած «Ի պաշտպանություն Պուբլիոս Սեստիոսի»* (**Cicéron**, Discours, t. XIV, Paris, 1965) *ճառերում։ Տիգրան Մեծի անձի և գործունեության արժեքավոր գնահատականներ են տրված նաև «Ի պաշտպանություն Պուբլիոս Սեստիոսի» ճառում։*

*Ճառերի ստորև բերված հատվածների թարգմանությունը լատիներենից և ծանոթագրությունները՝ Ռ. Լ. Մանասերյանի։*

### *1.*

### ՀԱՏՎԱԾ «ԳՆԵՈՍ ՊՈՄՊԵՈՍԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ» ՃԱՌԻՑ

*Սրան (Միհրդատ Եվպատորին – Ռ. Մ.), որ վախեցած էր ու փախստական, Տիգրանը՝ հայոց թագավորը, ընդունեց, հավատը նրա*

*գործերին ամրապնդեց, բեկվածին բարձրացրեց, հուսալքվածին քաջալերեց:*

## 2.

### ՀԱՏՎԱԾ «Ի ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆ ՊՈՒԲԼԻՈՍ ՍԵՍՏԻՈՍԻ» ՃԱՌԻՑ

*Մենք ինքներս վերջերս վարել ենք Հայոց թագավոր Տիգրանի դեմ երկարատև և ծանր պատերազմ*[1] (grave bellum), *քանզի նա անօրենություններ գործելով մեր դաշնակիցների հանդեպ, կարելի է ասել, պատերազմ է սանձազերծել մեր դեմ*[2]*:*

*Եվ նա անձամբ ինքնին չատ զորեղ (կռովալից) էր*[3] *և մեր տերության ոխերիմ թշնամուն՝ Պոնտոսից վտարված Միհրդատին իր զորքերով և իր թագավորության մեջ պաշտպանեց: Եվ մղվելով Լուկիոս Լիկինիոս Լուկուլլոսի՝ քաջարի այրի և իմպերատորի կողմից, նա իր զորքերի մնացորդներով պահպանեց թե՛ իր թշնամական ոգին մեր հանդեպ, թե՛ իր նախկին մտադրությունները: Գնեոս Պոմպեոսը... որոշ պայմաններ դնելով նրան պատվիրեց թագավորել, գտնելով որ ոչ պակաս փառավոր է իր և մեր տերության համար նրան հաստատել որպես թագավոր, քան դնել կապանքների մեջ:*

*Այսպիսով նա (Տիգրանը), որը ինքը Հռոմի ժողովրդի թշնամին էր, որն ընդունել էր մեր չարագույն ոսոխին իր թագավորության մեջ, որը բախման մեջ էր մտել մեզ հետ, որը մարտի էր բռնվել, որը պայքարեց գրեթե տիրակալության համար, այժմ թագավորում է*[4] *և օգտվում բարեկամի և դաշնակցի կոչումից, որոնց նա ինքը իր զենքով բռնացել էր:*

*1. Կիկերոնի ճառի այդ դրվագում տրված է հռոմեա-հայկական պատերազմի գնահատականը որպես ծանր պատերազմի Լուկուլլոսի բանակի համար: Այսպիսով մեր առջև պատերազմի անհաջող ելքի Հռոմի կողմից պաշտոնական ճանաչումն է:*

*2. Կիկերոնի ճառը բովանդակում է և այն ուղղակի ցուցումը (ինչը նաև Հռոմի սենատի դիրքի արտացոլումն էր), որ Ք. ա. 69-67 թթ. պատերազմի պատճառն էր Հայոց թագավորի գործունեությունը՝ Հռոմի ազդեցությունը Արևելքում վերացնելու նպատակով: Տիգրանի տերության ստեղծումը, որը նշանակում էր Հռոմի համար Արևելյան Միջերկրածովքի կորուստ, իրավամբ գնահատվում է որպես Հայոց թագավորի պայքարը գրեթե տիրակալության համար* (de imperio paene certavit)*: Հաշտության կնքումը Տիգրանի հետ ըստ Կիկերոնի դիտարկման,*

*պայմանավորված էր Հռոմի շահերի մեջ տեղ գտած փոփոխություններով՝ Արևելքում ուժերի դասավորման մեջ տեղաշարժերով: Բարեհաջող հաշտության նախապատրաստման մեջ Տիգրան Մեծի դիվանագիտական դերի մասին տե՛ս* ***Ռ. Լ. Մանասերյան,*** *Տիգրան Մեծ. Հայաստանի պայքարը Հռոմի և Պարթևստանի դեմ, Երևան, 1987, էջ 199-236:*

*3.* ***Խիստ ուշագրավ է Տիգրան Մեծի անձին տրված կիկերոնյան բնութագիրը՝*** *«նա անձամբ ինքնին շատ զորեղ (կորովալից) էր» (Hic et ipse per se vehemens fuit):* ***Կիկերոնի*** *օգտագործած vehemens բառը* ***Հռոմում քաղաքական այրերին տրվող բարձրագույն գնահատականն էր,*** *որով հատկանշվում էր տվյալ անձի թե՛ հոգևոր և թե՛ ֆիզիկական ուժը, նրա եռանդը, բացառիկությունը: Պատերազմի իր համար ծանր պահին՝ Ք. ա. 69 թվականին Տիգրանը, ըստ Կիկերոնի բնութագրի, ցուցաբերում է անձնական հաստատակամություն՝ մարտնչելու և հաղթանակելու վճռականություն:* ***Կիկերոնի*** *այդ հաղորդման շնորհիվ հերքվում են Պլուտարքոսի պնդումները (****Plut.****, Luc., XXIX, 2) Տիգրանի բարոյական կացության մասին անմիջապես Տիգրանակերտի ճակատամարտից հետո:*



***Արտավազդ II***

*4. Այս վկայությունը հավաստում է, որ դեռևս Ք. ա. 56 թ. Տիգրան Մեծը թագավորում էր Հայաստանում:*

## ՎԵԼԼԵՈՍ ՊԱՏԵՐԿՈՒԼՈՍԸ ՏԻԳՐԱՆ ՄԵԾԻ ՄԱՍԻՆ

*Վելլեոս Պատերկուլոսը (Ք. ա. 20 – Ք. հ. 30) վաղ կայսերական շրջանի պատմագիր է: Նա հեղինակ է երկու գրքից բաղկացած «Հռոմեական պատմություն» աշխատության, որում ներկայացնում է Հռոմի պատմության համառոտ շարադրանքը՝ հնագույն ժամանակներից մինչև իր օրերը՝ Տիբերիոս կայսեր կառավարումը: Հպանցիկ անդրադառնալով Լուկուլլոսի և Պոմպեոսի արշավանքներին, նա տալիս է Տիգրան Մեծի քաղաքական գնահատականները, որոնք արտացոլում են իր օրոք Հռոմում Հայոց արքայի մասին ձևավորված պատկերացումները:*

*Թարգմանությունը բնագրից Ռ. Լ. Մանասերյանի (****Velleius***

*Paterculus*, Histoire Romaine, t. 1-II, Paris, 1982):

Գիրք II

*XXXIII. Լուկուլլոսը Հայաստանում հաղթեց Տիգրանին՝ թագավորներից մեծագույնին:*

*XXXVII. Միհրդատը նահանջեց դեպի Հայաստան, աներոջ[1]՝ Տիգրանի, իր ժամանակի հզորագույն թագավորի մոտ...*

*1. Պետք է լինի՝ փեսայի:*

## ԿՐԱՍՍՈՍԻ ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԸՍՏ ՊԼՈՒՏԱՐՔՈՍԻ

### *ՊԼՈՒՏԱՐՔՈՍ*

### *ԶՈՒԳԱՀԵՌ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### ԿՐԱՍՍՈՍ

*19. Կրասսոսին[1] առավելապես խրախուսեց Արտավազդը, Հայոց թագավորը: Նա ժամանեց ճամբար վեց հազար հեծյալներով: Սրանք, ինչպես նրանց անվանում էին, արքայի թիկնապահներն էին և ուղեկիցները: Արտավազդը խոստանում էր տալ ևս մեկ բյուր զրահապատ հեծյալ և երեք բյուր հետևակ, որոնց կպարենավորեր ինքը[2]: Նա համոզում էր Կրասսոսին Պարթևստան արշավել Հայաստանի միջով, քանի որ այնտեղ նա ոչ միայն ամեն ինչ առատորեն կունենար զորքի համար, քանզի այդ մասին ինքը կհոգար, այլև կընթանար ապահով ճանապարհով, պաշտպանված լինելով լեռներով, բլուրների անվերջանալի շարքերով, որոնք դժվարանցանելի են հեծելազորի համար, որը պարթևների միակ ուժն է: Կրասսոսը գոհ մնաց արքայի բարյացակամությունից և շռայլ օգնությունից, բայց ասաց, որ կառաջանա Միջագետքի միջով, որտեղ թողել է մեծաթիվ արի հռոմայեցի զինվորների[3]: Այնուհետև Հայոց թագավորը մեկնեց:*

*22. Արդ, բարբարոսը[4], համոզելով Կրասսոսին և նրան հեռացնելով գետից, հռոմայեցիներին տարավ հարթավայրով. այդ ճանապարհը[5] սկզբում հարմար ու հեշտ էր, իսկ հեգտագայում՝ խիստ դժվար: Ճանապարհին ընդարձակ ավազուտներ էին, և դժվար էր առաջ գնալ անատառազուրկ և անջրդի հարթավայրերով, որոնք ձգվում էին մինչև անընդգրկելի հեռուները: Զինվորները ոչ միայն ուժասպառ էին լինում ծարավից ու ճանապարհի դժվարություններից, այլև*

Հուսալքվում էին անուրախ տեսարաններից. նրանք չէին տեսնում ո՛չ մացառ, ո՛չ առվակ, ո՛չ բլրալանջ, ո՛չ կանաչ խոտ. Նրանց աչքի առաջ ծովի նման տարածվում էին ավազի ալիքները, որոնք բոլոր կողմերից շրջափակում էին զորքերին: Սրանում արդեն նկատվում էր նենգավոր մտադրությունը, երբ Արտավազդ Արմենի մոտից դեսպաններ ժամանեցին և Կրասոսին հայտնեցին, թե որքան ծանր վիճակում է Արտավազդը, որը մեծ պատերազմի է բռնվել Օրոդեսի[6] Հայաստան ներխուժման պատճառով[7]: Զրկված լինելով Կրասոսին օգնություն ուղարկելու հնարավորությունից, նա խորհուրդ է տալիս նրան, որ ավելի լավ կլինի, եթե ինքը՝ Կրասոսը ևս շրջվի ու գա այնտեղ և, միանալով հայերի հետ, միասին կռվի Օրոդեսի դեմ. իսկ եթե ոչ, ապա ճանապարհ գնալիս և կամ բանակելիս թող մշտապես խուսափի այնպիսի տեղերից, որոնք բարենպաստ են հեծելազորի համար, և թող նա մոտենա լեռնային տեղանքին: Բայց Կրասոսը, զայրացած և անխոհեմ, պատասխան չգրեց, այլ միայն պատվիրեց ասել, որ այժմ նա ժամանակ չունի Հայաստանի համար, բայց հետո կգա այնտեղ և Արտավազդին կպատժի դավաճանության համար:

32. Սուրենը[8] Կրասոսի գլուխը և ձեռքը[9] ուղարկեց Հայաստան, Օրոդեսին, իսկ ինքը սուրհանդակների միջոցով լուր հղեց Սելևկիա[10], թե այնտեղ է բերում կենդանի Կրասոսին, կազմակերպեց ինչ-որ խեղկատակային երթ՝ այն ծաղրաբար կոչելով տրիումֆ:

33. Երբ այս անցքերը տեղի էին ունենում, Օրոդեսն արդեն հաշտվել էր[11] Արտավազդ Արմենի հետ. նրանք համաձայնվել էին, որ Արտավազդի քույրը ամուսնանա Օրոդեսի որդու՝ Բակուրի հետ, նրանք փոխադարձաբար իրար մոտ խնջույքներ ու կերուխում էին կազմակերպում, հաճախ հունական ներկայացումներ էին տրվում, քանի որ Օրոդեսին օտար չէին հունարեն լեզուն ու գրականությունը, իսկ Արտավազդը նույնիսկ ողբերգություններ էր հորինում, գրում էր ճառեր ու պատմական երկեր, որոնց մի մասը պահպանվել է: Երբ պալատ բերեցին Կրասոսի գլուխը, սեղաններն արդեն հավաքել էին, և ողբերգակ դերասան Յասոն Տրալլացին արտասանում էր Եվրիպիդեսի «Բաքոսուհիները»[12] ողբերգությունից Ագավեին վերաբերող հատվածը[13]: Այն պահին, երբ նրան ծափահարում էին, սրահ մտավ Սիլլակեսը[14], երկրպագեց թագավորին և սրահի մեջտեղ նետեց Կրասոսի գլուխը: Պարթևները ծափահարում էին ցնծագին ճիչերով, և ծառաները, թագավորի հրամանով, Սիլլակեսին հրավիրեցին ընկողմանելու: Յասոնը Պենթևսի դիմակը հանձնեց դերասաններից մեկին, վերցրեց Կրասոսի գլուխը և, բաքոսյան հափշտակության մեջ,

սկսեց խանդավառությամբ արտասանել հետևյալ տողերը.

**Մենք բերում ենք սարերից,**
**Իբրև մի որս երջանիկ,**
**Այս բաղեղը՝ նոր կտրած։**

Բոլոր ներկաներին դա հրճվանք պատճառեց։ Իսկ երբ նա հասավ այն տողերին, ուր երգչախումբն ու Ագավեն փոխնիփոխ երգում էին.

**Ձեզանից ո՞վ սպանեց նրան։**
**– Ես սպանեցի, իմն է փառքը[16]...**

էքսատրոսը[17], որը ներկա էր խնջույքին, վեր թռավ տեղից և խլեց Յասոնի ձեռքից գլուխը, որպես նշան այն բանի, որ այդ բառերն ավելի շուտ ինքը պետք է արտասանի, քան Յասոնը։ Հիացած թագավորը իր երկրի սովորության համաձայն նվեր շնորհեց նրան, իսկ Յասոնին պարգևեց մեկ տաղանդ արծաթ։ Այս էր Կրասսոսի արշավանքի վախճանը, որը վերջացավ ողբերգության նման։

Բայց Օրոդեսի խստասրտությունը և Սուրենի նենգությունը նույնպես իրենց արժանի հատուցումը ստացան։ Քիչ անց Օրոդեսը, նախանձելով Սուրենի փառքին, նրան մահվան ենթարկեց, իսկ ինքը կորցրեց իր որդի Բակուրին, որը պարտություն էր կրել ճակատամարտում հռոմայեցիներից[18]։ Այնուհետև, երբ նա հիվանդացավ ջրգողությամբ[19], նրա մյուս որդին՝ Հրահատը, չարամտորեն ընձախոտ[20] տվեց հորը։ Բայց թույնը ներգործեց որպես դեղ և դուրս եկավ ջրի հետ միասին, այնպես որ հիվանդը բուժվեց, և այնժամ Հրահատը, ընտրելով ամենահաստատ միջոցը, խեղդեց հորը[21]։

1. **Մարկոս Լիկինիոս Կրասսոս** (115-53) – Հռոմի աչքի ընկնող քաղաքական ու ռազմական գործիչ։ Առաջին եռապետության (60 թ.) կազմակերպիչներից մեկը, 55 թ. կոնսուլ։ 55 թ. վերջերին նշանակվել է Սիրիա պրովինցիայի պրոկոնսուլ և արևելքում հռոմեական զորքերի գլխավոր հրամանատար։ 54 թ. գարնանը Կրասսոսը նախնական որոշ ռազմական գործողություններ է սկսում պարթևների դեմ, հենց այդ ժամանակ Կրասսոսի մոտ՝ Ասորիք է ժամանում Հայոց Արտավազդ II թագավորը (55-34)։

2. Այսպիսով, Արտավազդը Կրասսոսի տրամադրության տակ էր դնելու հայկական բանակի կեսը՝ 46 հազար զինվոր։

3. Կրասսոսի պարթևական արշավանքը սկսվել է 53 թ. գարնան սկզբին, նրա տրամադրության տակ էր գտնվում յոթ լեգեոն, այսինքն՝ շուրջ 42 հազար զին –

*վոր:*

*4. Պլուտարքոսը նկատի ունի Հռոմի դաշնակից Օսրոենեի Աբգար II Թագավորին, որը ուղեկցի դեր էր կատարում Կրասսոսի մոտ:*

*5. Անցնելով Եփրատը Զեգմայի մոտ՝ Կրասսոսը Եփրատի հոսանքն ի վար իջավ ներքև և Միջագետքի տափարակներով շարժվեց դեպի Սելևկիա ու Տիզբոն:*

*6. Խոսքը պարթևական Օրոդես II Թագավորի (57-38) մասին է:*

*7. Արտավազդը այնպես էլ չհասցրեց մասնակցել Կրասսոսի արշավանքին, որովհետև Օրոդես II-ը նախահարձակ լինելով՝ ներխուժեց Հայաստան, և հայկական բանակը զբաղված էր երկիրն ասպատակող պարթևական զորքերին հակահարված տալով:*

*8. **Սուրեն** – պարթևական ականավոր զորավար, համանուն հոչակավոր տոհմի ներկայացուցիչ (տե՛ս նաև 389-րդ էջ, ծան. № 3):*

*9. Պարթևական այրուձին Սուրենի հրամանատարությամբ 53 Թ. մայիսի 6-ին, Խառան քաղաքի մոտ շրջապատել և գլխովին ջախջախել էր Կրասսոսի զորքերին: Այստեղ հռոմեացիները տվեցին 20 հազար սպանված և 10 հազար գերի: Սպանվեց նաև Կրասսոսը:*

*10. **Սելևկիա** – հելլենիստական աշխարհի խոշորագույն քաղաքներից մեկը՝ Տիգրիսի աջ ափին:*

*11. Ըստ երևույթին, հայ-պարթևական համաձայնագիրը կնքվել էր այն բանից հետո, երբ Օրոդեսի զորքերը հակահարված էին ստացել հայերից: Արտավազդը, որը շահագրգռված չէր այս պատերազմում, դաշինք կնքելով պարթևների հետ, նպատակ ուներ համատեղ պայքարելու հռոմեական նվաճողների դեմ:*

*12. Հույն նշանավոր Թատերագիր Եվրիպիդեսը (484-406) գրել է շուրջ ինն - սուն ողբերգություն, որոնցից մեզ են հասել միայն տասնյոթը, այդ Թվում նաև «Բաքոսուհիները»: Այս երկը նվիրված է գինու, գինեգործության, խմբապարերի ու շվայտանքի աստծո՝ Դիոնիսոս-Բաքոսի հետ շրջող և նրան երկրպագող կանանց:*

*13. Ագավեն «Բաքոսուհիներ» ողբերգության գլխավոր հերոսուհին է: Նա դուստրն էր Հարմոնիայի և Թեբեի արքա Կադմոսի:*

*14. Սա Միջագետքի պարթևական սատրապության կուսակալն էր:*

*15. **Պենթևս** – Թեբեի արքան՝ Էքիոնոսի և Ագավեի որդին, Կադմոսի Թոռը: Պենթևսը ժխտում էր Դիոնիսոսի Զևսի որդին լինելու հանգամանքը և չէր ճանաչում նրա աստվածային ծագումը: Դաժանորեն հետապնդում ու հալածում էր Դիոնիսոսի երկրպագուներին և Բաքոսյան տոնախմբությունների մասնակցողներին: Զայրացած Դիոնիսոսը որոշում է պատժել նրան: Մի անգամ, երբ Պենթևսը բարձրանալով եղևնու վրա՝ գաղտագողի հետևում էր բաքոսուհիներին, որոնց մեջ էր նաև նրա մայրը՝ Ագավեն, Դիոնիսոսի կոչով բաքոսուհիները տապալում են եղևնին և կտոր-կտոր անում Պենթևսին, կարծելով Թե նա վայրի գազան է: Բաքոսային մոլագարությամբ Ագավեն հափշտակում է Պենթևսի արնաթաթավ*

*գլուխը և բաքոսուհիների հետ երգելով շարժվում դեպի Թեբե: Ճանապարհին նրանք հանդիպում են Կադմոսին, որը և Ագավեին սթափեցնում ու բացատրում է եղելությունը, և այնժամ է միայն Ագավեն հասկանում, թե ինչ սոսկալի ոճիր է գործել ինքը:*

*16. «Բաքոսուհիներ» ողբերգության 1169-1171-րդ տողերը:*

*17.* ***Էքսաթրոս*** *(Պոմաքսաթրոս) - սա էր սպանել Կրասսոսին, թեև Պլուտարքոսը բերում է նաև մեկ այլ վկայություն, որ էքսաթրոսը միայն կտրել է արդեն սպանված Կրասսոսի գլուխն ու բազուկը և դրանք հանձնել Սուրենին:*

*18. Այսինքն՝ Ք. ա. 38 թվականին:*

*19. Խոսքը ջրգողություն (*ВОДЯНКА*) հիվանդության մասին է:*

*20.* ***Ընձախոտ*** *(քնախոտ, ակոնիտոն) - գորտնուկազգիների ընտանիքին պատկանող բազմամյա խոտաբույս, որի պալարները թույն են պարունակում:*

*21. Հրահատը սպանելով իր հորը բարձրացավ պարթևական գահ Հրահատ IV անունով (38-2):*

## ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍԸ Ք. Ա. 69-66 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

***Դիոն Կասսիոս Կոկկեյանոսը (շուրջ 155-235) ուշ անտիկ շրջանի հռոմեական խոշորագույն պատմիչներից մեկն է: Նա ծնվել է Բյութանիայի Նիկիա քաղաքում, բարձրաշխարհիկ ընտանիքում: Ստացել է իր ժամանակի համար փայլուն կրթություն: Տարբեր տարիների ընթացքում վարել է պետական մի շարք պաշտոններ: Եղել է Հռոմի սենատի անդամ (180 թ.), կոնսուլ (211 և 229 թթ.), Պերգամոնի կառավարիչ (216 թ.) և այլն: 216 թ. Դիոնը ուղեկցել է Անտոնինոս Կարակալլա կայսրին՝ վերջինիս ձեռնարկած արևելյան արշավանքի ժամանակ և հասել մինչև Հայաստան:***

***Սեպտիմիոս Սևերոս կայսեր (193-211) տարիներին Դիոն Կասսիոսը սկսում է իր գրական գործունեությունը: Այդ ժամանակ է, որ նա միտք է հղանում գրելու հռոմեական պետության ամբողջական պատմությունը՝ սկսած նրա առասպելական հիմնադիր Էնեասից մինչև իր ժամանակները: Շուրջ 30 տարվա ընթացքում (200-229 թթ.) Դիոն Կասսիոսը շարադրում է «Հռոմեական պատմություն» մեծածավալ երկասիրությունը: Այս աշխատությունը բաղկացած է եղել 80 գրքից, սակայն դրանից ամբողջությամբ պահպանվել են միայն 24-ը (XXXVI-LX գրքերը), այսինքն՝ Ք. ա. 68 թվականից մինչև Ք. հ. 47 թվականի միջև ընկած ժամանակահատվածի պատ-***

*մուԹյան նկարագրուԹյունը։ Մնացած գրքերից մեզ են հասել միայն առանձին հատվածներ, որոնք քաղվածաբար մեջ են բերել ուշ շրջանի բյուզանդական տարեգիրներ Քսիփիլինոսը (XI դ.), Զոնարասը (XII դ.) և Ցեցեսը (XII դ.)։*

*Դիոն Կասսիոսի երկասիրուԹյունը կարևորագույն սկզբնաղբյուր է ընդհանրապես Հին աշխարհի և մասնավորապես՝ Ք. ա. I դ.- Ք. հ. II դ. Հայաստանի պատմուԹյան ուսումնասիրուԹյան համար։ Վաղ շրջանի պատմուԹյունը շարադրելիս՝ Դիոնը մեծապես օգտվել է իրեն նախորդող պատմագիրներից, սակայն նա կուրորեն չի հետևել նրանց։ Տարիներ շարունակ զբաղեցնելով զինվորական և քաղաքացիական բարձր պաշտոններ՝ նա լայն հնարավորուԹյուններ է ունեցել օգտվելու պետական պաշտոնական վավերագրերից ու արխիվային նյուԹերից, որոնցից շատերը մուծել է իր ՊատմուԹյան մեջ՝ դրան տալով ավելի արժանահավատ բնույԹ։ Սակայն Դիոնի ծագումը, սոցիալական դիրքն ու զբաղեցրած պետական բարձր պաշտոններն իրենց կնիքն են Թողել նրա ՊատմուԹյան վրա։ Նա որոշ պատմական անցքեր նկարագրել է կողմնապահուԹյամբ՝ հօգուտ Հռոմի և ի վնաս Արևելքի ժողովուրդների։*

*Դիոն Կասսիոսից ստորև բերված հատվածները քաղել ենք «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի 9-րդ հատորում (Երևան, 1976) զետեղված պատմական Հայաստանին և հարևան երկրներին վերաբերող նրա ՊատմուԹյան հայերեն ԹարգմանուԹյունից, որը կատարել է Ս. Մ. Կրկյաշարյանը «*Cassii Dionis Cocceani Historiarum Romanorum quae supersunt. Ed. Boissevain, Berolini, 1895*» հրատարակուԹյունից։*

ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍ

ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

**Գիրք քառասուներորդ**

*Այդ ժամանակ[1] Լուկիոս Լուկուլլոսը պատերազմում հաղԹելով Ասիայի տիրակալներ Միհրդատին և արմեն Տիգրանին, և ստիպելով նրանց խուսափել ճակատամարտից, պաշարում էր Տիգրանակերտը։ Բայց բարբարոսները նետաձգուԹյամբ և (պաշարողական) մեքենաների վրա Թափած նավԹով[2] մե-*

2 *ծապես վնասեցին նրան: Այս դեղանյութը կուպրաչատ էր և*
*բոցավառվող, այնպես որ հրկիզում էր այն ամենը, ինչի կպչում*
*էր, և ոչ մի հեղուկով հեշտ չէր այն հանգցնել: Այս բանից*
*Տիգրանը նորից սրտապնդվելով, այնքան մեծ զորքով առաջ*
*եկավ, որ նույնիսկ ծիծաղեց այնտեղ գտնվող Հռոմեացիների*
*վրա. պատմում են, ուրեմն, որ նա իբր ասել է՝ եթե եկել են պա-*
*տերազմելու, քիչ են, իսկ եթե եկել են դեսպանության՝ շատ*
3 *են եկել: Սակայն նրա հրճվանքը երկար չտևեց, այլ շուտով*
*նրան պարզ դարձավ, թե որքան քաջությունն ու արվեստը գե-*
*րազանցում են ամեն մի թվի: Նրա փախուստից հետո զինվոր-*
*ները, գտնելով նրա խույրը և մոտիկ ընկած ապարոշը, հանձ-*
*նեցին Լուկուլլոսին, քանզի վախենալով նրանց կողմից ճանաչ-*
*վելով բռնվելուց, (արքան) պոկել էր դրանք ու դեն շպրտել*[3]*:*
1 *... Եվ քանի որ (Միհրդատը) ենթարկվել էր բախտի երկու*
*ծայրահեղություններին, (Տիգրանը) նրան հանձնեց (զորքի*
*հրամանատարությունը ?): Քանզի շատ անգամներ պարտվե-*
*լով և հաղթելով, ենթադրում էր, որ նա ոչ պակաս հմուտ էր*
*դարձել ռազմական արվեստին: Ուստի և նրանք ասես թե նոր*
*էին պատրաստվում պատերազմ սկսելու, դեսպաններ ուղար-*
*կեցին հարևաններին և, իմիջիայլոց, նաև Արշակ Պարթևին*[4]*,*
*թեպետև սա Տիգրանի հանդեպ թշնամություն ուներ վիճելի մի*
*երկրամասի պատճառով*[5]*, և խոստացան այն զիջել նրան. միա-*
2 *ժամանակ նրանք մեղադրում էին Հռոմեացիներին, ասելով, որ*
*եթե իրենք առանձին մնան և Հռոմեացիները հաղթեն իրենց,*
*ապա անհապաղ կարշավեն նաև նրա դեմ: Քանզի ամեն մի*
*հաղթողի բնականից հատուկ է անհագությունը և նրա ընչա-*
*քաղցությունը ոչ մի սահման չի ունենում. այսպես ևս Հռոմեա-*
*ցիները, որոնք ուժով տիրել են շատերին, չեն ցանկանա զրկ-*
*վել այդ ամենից:*
2,1 *Մինչդեռ նրանք այդպես էին գործում, Լուկուլլոսը Տիգրանին*
*չհետապնդեց, այլ թույլ տվեց նրան շատ ազատորեն փրկվել:*
*Այս պատճառով էլ Լուկուլլոսը քաղաքացիների և մյուսների*
*կողմից պաշտոնանկ հայտարարվեց այն մեղադրանքով, որ իբր*
*չի ցանկանում վերջ տալ պատերազմին, որպեսզի կարողանա*
2 *իր իշխանությունը երկարաձգել: Ուստի և նրանք Ասիայում իշ-*
*խանությունը վերադարձրին պրետորներին*[6] *ու դրանից հետո,*
*երբ պարզ դարձավ, որ նա շարունակում է նույն եղանակով*
*գործել, նրանք ուղարկեցին այդ տարվա կոնսուլին՝ փոխա-*

3 րինելու Լուկուլլոսին: Մինչդեռ նա Տիգրանակերտը գրավեց
այնտեղ բնակեցված օտարների ապստամբության հետևան-
քով[7]: Քանզի նրանց մեծ մասը կիլիկեցիներ էին, որոնք մի
ժամանակ տեղահանվել էին իրենց երկրից, և այժմ գիշերով
4 հռոմեացիներին ներս թողեցին: Այնուհետև մնացած ամեն ին-
չը հափշտակվեց, բացի կիլիկեցիների ունեցվածքից...:
3,1 Եվ նրանցից[8] տեղեկանալով Տիգրանի և Միհրդատի կողմից
Արշակին ուղարկված դեսպանության մասին, ինքը ևս դրան
հակառակ, դաշնակիցներից ոմանց ուղարկեց նրա մոտ, սպառ-
նալիքներով՝ եթե օգնելու լինի նրանց, և խոստումներով՝ եթե
2 ընտրելու լինի իրեն: Իսկ Արշակը այժմ, քանի որ դեռևս գայրա-
ցած էր Տիգրանի դեմ և միաժամանակ ոչ մի կասկած չուներ
հռոմեացիների հանդեպ, փոխադարձ դեսպաններ ուղարկեց
(Լուկուլլոսի մոտ) և բարեկամություն ու դաշնակցություն
3 հաստատեց:
4,1 Այդ տարին ահա Լուկուլլոսն այսպես գործեց և գրավեց
2 Հայաստանի շատ մասերը: ... Լուկուլլոսը արդեն ամռան կեսին
սկսեց արշավանքը, քանզի ցրտերի պատճառով անկարելի էր
գարնանը ներխուժել թշնամու երկիրը, և ավերեց երկրի որոշ
մասերը, որպեսզի բարբարոսները պաշտպանելով այն, ներ-
քաշվեն պատերազմի մեջ. բայց քանի որ նրանք դարձյալ
5,1 չշարժվեցին, ինքն արշավեց նրանց վրա: Եվ այս ընդհարման
ժամանակ հռոմեացի հեծյալներին թշնամու հեծելազորը
դժվար դրության մատնեց, իսկ հետևակի հետ նրանցից ոչ մե-
կը ձեռնամարտի դուրս չեկավ, այլ նրանք փախչում էին ամեն
անգամ, երբ Լուկուլլոսի վահանակիրները օգնության էին
հասնում հեծելազորին: Այսուհանդերձ, թշնամիները որևէ
վնաս չկրեցին. այլ նրանք ետ դառնալով և հետապնդողներին
նետահարելով, շատերին իսկույն սպանեցին, իսկ շատ
2 շատերին էլ վիրավորեցին: Ու վերքերը ծանր էին և դժվար բու-
ժելի. քանզի նրանք գործածում էին երկծայր նետեր, և ծայրե-
րը այնպես էին իրար ագուցված, որ նետերը թե՛ մարմնի որևէ
մասում մնալու և թե՛ դուրս քաշվելու դեպքում, արագորեն
սպանում էին, որովհետև երկաթյա ծայրերից մեկը, որը չէր
ամրացված, մնում էր վերքի մեջ[9]:
6,1 Այնժամ Լուկուլլոսը, քանի որ շատերը վիրավորվում էին և
մի մասն էլ մահանում էր, իսկ հաշմվածները հեծծում էին, և
միաժամանակ պարենամթերքը պակասում էր, նահանջեց այդ-

տեղից և արշավեց Նիսիբիսի[10] վրա: Այս քաղաքը կառուցված
2 է Միջագետք կոչված երկրում, քանզի այսպես է կոչվում Տիգրիսի և Եփրատի միջև գտնվող ամբողջ (երկիրը), և այժմ այն պատկանում է մեզ և համարվում է մեր գաղութը: Բայց այդ ժամանակ Տիգրանը պարթևներից վերցնելով այն, իր գանձերը և այլ հարստությունների մեծ մասը այնտեղ էր կենտրոնացրել և իր եղբորը[11] այնտեղ բերդապահ էր կարգել: Լուկուլլոսը ամռանը հասնելով այս քաղաքը, թեպետև հարձակվում էր ոչ խիզախայլոց, բայց ոչինչ չկարողացավ վճռել. քանզի (քաղաքի) պարիսպները և՛ կրկնակի, և՛ աղյուսաշեն լինելով, մեծ հաստություն ունեին և բաժանված էին խորը խրամատով. այնպես որ ոչ մի տեղում չկարողացավ (պարիսպը) ոչ քանդել, ոչ իսկ խախտել. ուստի և Տիգրանը նույնիսկ օգնության չեկավ յուրայիններին: Բայց երբ ձմեռը վրա հասավ,
7,1 և բարբարոսները դարձան առավել անզգույշ, քանի որ իրենք գերազանցել էին հռոմեացիներին և երբեք չէին սպասում, որ
2 նրանք իրենց տեղերից կշարժվեն, (Լուկուլլոսը) ընտրելով անլուսնկա մի գիշեր, երբ ուժեղ տեղատարափ էր և ամպրոպ, ուստի և թշնամին չէր կարող նախապես ոչինչ տեսնել, ոչ իսկ լսել, լքեց արտաքին չրջապարիսպը և միջակա խրամատը՝ թողնելով մի փոքր խումբ, և շատ տեղերում մոտեցավ պարսպին, առանց դժվարության անցավ հողաթմբերը և հեշտությամբ սպանեց այնտեղ թողնված ոչ մեծաթիվ
3 պահակներին: Եվ այսպիսով, խրամատի մի մասը լցրեց, քանզի բարբարոսները քանդել էին կամուրջները, իսկ ուժեղ տեղատարափի պատճառով ո՛չ նետաձգությունը, ո՛չ իսկ կրակը չէին կարողանում նրան վնասել: Ուստի անցնելով այն, անմիջապես գրավեց ամեն ինչ, քանի որ ներքին չրջապարիսպը այնքան ամուր չէր, որովհետև արտաքին պատի ամրությունը վստահություն էր ներշնչում: Իսկ միջնաբերդ փախածներին,
4 որոնց մեջ էր նաև Տիգրանի եղբայրը, հետագայում ստիպեց հանձնվել: Այսպիսով և՛ մեծաքանակ հարստություն ձեռք բերեց, և՛ այնտեղ էլ ձմեռեց:
8,1 Ուստի Նիսիբիսն այս կերպ նա գրավեց, բայց Հայաստանի, ինչպես և Պոնտոսի շուրջը գտնվող մի շարք երկրամասեր կորցրեց: Քանզի Տիգրանը, կարծելով, որ Նիսիբիսը անառիկ է, օգնություն չուղարկեց, այլ արշավեց դեպի վերոհիշյալ երկրամասերը, որպեսզի, քանի դեռևս Լուկուլլոսը զբաղված էր Նի-

*սիբիսի շուրջը, ինքը կարողանար ետ նվաճել դրանք: Այն-*
2 *ժամ նա Միհրդատին ետ ուղարկեց իր երկիրը, իսկ ինքը եկավ իր Հայաստանը և այստեղ իրեն դիմադրած Լուկիոս Փաննիոսին շրջապատեց ու պաշարեց, մինչև որ Լուկուլլոսն այդ մասին իմանալով, օգնություն ուղարկեց:*
9,1 *Մինչ այս դեպքերը տեղի էին ունենում, Միհրդատը, մտնելով մյուս Հայաստանը*[12] *և նրա մերձակա շրջանները, հռոմեացիներից շատերին, որոնք թափառում էին երկրով մեկ, հանկարծակի հարձակվելով՝ ոչնչացրեց, իսկ մյուսներին*
2 *պատերազմում ջարդեց. և դրանով իսկ երկրի մեծագույն մասը արագորեն նվաճեց:*
41,1 *... (Գայոս Մանիլիոսը)*[13] *Պոմպեոսին*[14] *կարգեց Տիգրանի և Միհրդատի դեմ մղվող պատերազմի հրամանատար, ինչպես և Բյութանիայի և Կիլիկիայի վրա կառավարիչ:*

* * *

45,2 *Այդ ժամանակ էլ (Պոմպեոսը) ցանկանալով փորձել Միհրդատի մտայնությունը, ուղարկեց Մետրոփանեսին*[15] *նրա մոտ բարեկամական առաջարկներով: Իսկ Միհրդատն այնժամ*
3 *նրան արհամարհեց, քանի որ պարթևների թագավոր Արշակը այդ ժամանակ մահացած լինելով, նա հույս ուներ իր կողմը գրավել նրան հաջորդած Փրաատեսին*[16]*: Սակայն Պոմպեոսը կանխեց նրան, Փրաատեսի հետ շտապ կերպով նույն պայմաններում բարեկամություն հաստատելով և համոզելով նրան անհապաղ ներխուժել Տիգրանին (պատկանող) Հայաստանի մասերը:*
47,1 *Իսկ Միհրդատը առժամանակ խույս էր տալիս, քանզի նրա զորքերը առավել թույլ էին, և (Պոմպեոսի) առաջ երկիրը շարունակ ավերում էր, ստիպում նրան երկար թափառել և միաժամանակ պարենամթերքի պակաս զգալ. բայց երբ Պոմպեոսը ներխուժեց Հայաստան*[17] *և՛ պարեն գտնելու նպատակով, և՛ որպեսզի այն գրավի, թեպետև ամայացած, այնժամ*
2 *Միհրդատը, վախենալով, որ այն կարող է գրավվել նախքան իր տեղ հասնելը, ինքը ներխուժեց այդ երկիրը...:*
48,1 *Երբ (Պոմպեոսը) արդեն այդ բոլորը (պարենը) հաստատապես հայթայթում էր և ոմանց օգնությամբ տիրացավ Հայաստանին պատկանող Անահտական երկրին*[18]*, որը նվիրված*

էր համանուն մի աստվածուհու, այդ բանից հետո շատերը
ևս հարեցին նրան և, դրանից բացի, Մարկիոսի[19]
2 զինվորները ևս միացան (Պոմպեոսի) զորքերին, Միհրդատը
վախեցավ և այլևս չմնաց այդ երկրում, այլ խկույն գիշերով
3 աննկատելի հեռացավ և այնուհետև գիշերային երթերով առաջացավ դեպի Տիգրանի Հայաստանը:
50,1 Այնժամ Միհրդատը շտապեց դեպի Տիգրանը. բայց երբ նրա մոտ նախ բանագնացներ ուղարկեց, ոչ մի սիրալիրություն չհանդիպեց, քանի որ (Տիգրանի) որդին՝ Տիգրանը[20], ապստամբել էր (հոր) դեմ, իսկ սա կասկածում էր, որ Միհրդատը, լինելով նրա պապը, հրահրել էր այդ վեճը իր դեմ: Ուստի և Տիգրան (արքան) ոչ միայն չընդունեց նրան, այլև նրա կողմից եկած բանագնացներին կալանավորեց ու բանտարկեց: (Ահա այս բոլորից հետո) Միհրդատը հուսախաբ լինելով, չուռ եկավ դեպի Կոլխիս...:
51,1 Պոմպեոսը այսպես էր գործում. իսկ Տիգրանը՝ Տիգրանի որդին, վերցնելով իր հետ հզորներից[21] ոմանց, որովհետև նրանց հաճելի չէր ծերունու[22] իշխանությունը, փախավ Փրաատեսի մոտ. և մինչդեռ սա Պոմպեոսի հետ կնքված դաշինքի պատճառով մտածում էր իր անելիքի մասին, համոզեց
2 նրան ներխուժել Հայաստան: Եվ նրանք եկան մինչև Արտաշատ, իրենց առաջ ընկած երկիրը հպատակեցնելով, մինչև իսկ հարձակվեցին (Արտաշատի վրա). քանզի ծերունի Տիգրանը վախենալով նրանցից, ապաստանել էր լեռները. բայց երբ պարզվեց, որ (քաղաքի) պաշարման համար ժամանակ էր պետք, Փրաատեսը զորքերի մի մասը թողնելով (Տիգրանի) որդուն, վերադարձավ իր հայրենի երկիրը. այնժամ էլ հայրը դուրս եկավ արդեն մենակ մնացած որդու դեմ և հաղթեց. իսկ
3 նա փախչելով, նախ ուղևորվեց դեպի Միհրդատը՝ իր մեծ հայրը. բայց երբ իմացավ, թե նա պարտվել է և ավելի շուտ ինքն է օգնության կարիք զգում, քան թե ի վիճակի է ուրիշին օգնելու, գնաց հռոմեացիների մոտ. և Պոմպեոսը նրան օգտագործելով իբրև առաջնորդի, արշավեց Հայաստան, նրա հոր դեմ:
52,1 Եվ Տիգրանը իմանալով այս մասին և տագնապելով, իսկույն նրա մոտ հաշտության բանագնացներ ուղարկեց և նրան հանձնեց Միհրդատի դեսպաններին: Եվ քանի որ իր որդու հակառակվելու պատճառով չէր կարող մեղմ պայմանների հասնել, և երբ արդեն Պոմպեոսն էլ Արաքսն անցնելով մո-

*տեցել էր Արտաշատին, այնժամ Տիգրանը թե՛ քաղաքը հանձնեց նրան և թե՛ ինքը հոժարակամ եկավ նրա զորա-*
2 *կայանը: Նա զգեստավորվել էր այնպես, որ դրսևորվեր և՛ իր նախկին շքեղությունը, և՛ այժմյան խոնարհ վիճակը, որպեսզի նրան արժանի երևա թե՛ հարգանքի և թե՛ կարեկցանքի:*
3 *Քանզի նա իր վրայից հանել էր սպիտակաշերտ պատմուճանը և համակ ծիրանի վերարկուն, բայց գլխին կրում էր խույրը և ապարոշը: Արդ՝ Պոմպեոսը իր մականակիրներից[23] մեկին ուղարկելով նրան ընդառաջ, ձիուց վար իջեցնել տվեց, որովհետև նա, իրենց սովորության համաձայնի, հեծյալ վիճակում էր մտել ամրություն: Բայց երբ Պոմպեոսը տեսավ նրան, որ հետիոտն ներս մտավ և դեն նետելով գլխի ապարոշը գետին ընկավ և ուզում էր իրեն երկրպագել, գթաց և տեղից*
4 *վեր կենալով բարձրացրեց նրան և ապարոշը կապելով նրա գլխին, նստեցրեց նրան իր կողքի բազմոցին և մխիթարելով ասաց նաև, թե նա ոչ միայն չի կորցրել Հայոց թագավորությունը, այլև ձեռք է բերել հռոմեացիների բարեկամությունը:*
53,1 *Այս խոսքերով նա քաջալերեց նրան և ընթրիքի հրավիրեց: Իսկ որդին, որը նստած էր Պոմպեոսի մյուս կողքին, հորը տեսնելիս վեր չկացավ և ոչ իսկ որևէ մի այլ ձևով նրան պատվեց. նույնիսկ ճաշի հրավիրված լինելով հանդերձ, չգնաց: Այս պատճառով էլ նա մեծապես ատելի դարձավ Պոմպեոսին:*
2 *Այսպիսով, հաջորդ օրը (Պոմպեոսը) լսելով նրանց, ավագին[24] վերադարձրեց նրա ամբողջ հայրենի իշխանությունը. բայց նրա կողմից նվաճված երկրները, որոնց մեջ նաև Կապադովկիայի և Ասորիքի մասերը, ինչպես նաև Փյունիկիան և փոքր երկիր Ծոփքը, վերցրեց նրանից, ինչպես նաև գանձեր պահանջեց նրանից. իսկ կրտսեր (Տիգրանին) պարգևեց միայն*
3 *Ծոփքը: Եվ քանի որ պատահմամբ Ծոփքում էին գտնվում գանձատները, ուստի և երիտասարդը սրանց պատճառով վիճեց և հաջողություն չունենալով, քանի որ Պոմպեոսը ոչ մի այլ տեղից չէր կարող ստանալ պայմանավորված գումարը, դժգոհեց և մտադրվեց փախչել: Սակայն Պոմպեոսը, տեղեկանալով այդ մասին, նրան հսկողության տակ վերցրեց առանց կալանքի, և սուրհանդակներ ուղարկելով գանձերի պահապանների մոտ, հրամայեց նրանց, որ այդ բոլորը հանձնեն*
4 *նրա հորը: Եվ որովհետև նրանք չհնազանդվեցին, ասելով, թե երիտասարդ (Տիգրանը), որին այժմ պատկանում է այդ երկի-*

*րը, պետք է այդ բանը հրամայի իրենց, ապա (Պոմպեոսը) նրան*
*ուղարկեց դեպի բերդերը: Եվ սա, բերդերը փակ գտնելով, մո-*
*տիկ գնաց և դժկամությամբ հրամայեց բաց անել դրանք: Եվ*
*երբ նրանք այլևս չէին հնազանդվում, առարկելով, որ նա այդ*
*հրամանը տվել է ոչ թե կամովին, այլ հարկադրված, Պոմպեո-*
*սը զայրացավ և շղթայեց (երիտասարդ) Տիգրանին:*
5 *Եվ այսպիսով, ծերունի (արքան) ստացավ գանձարանները.*
*իսկ նա[25] զորքը երեք մասի բաժանելով, ձմեռեց Անահտական*
*երկրում և Կյուռնոս[26] գետի մոտ ու Տիգրանից էլ մեծ քանա-*
*կությամբ այլ բաներ ևս ստացավ, ինչպես նաև պայմանավոր-*
*վածից ավելի շատ գանձեր: Եվ առավելապես այդ իսկ*
6 *պատճառով, քիչ ժամանակ անց, նա (Տիգրանին) գրանցեց*
*(հռոմեական ժողովրդի) բարեկամների ու դաշնակիցների ցու-*
*ցակի մեջ և նրա որդուն հսկողության տակ բերեց Հռոմ:*

## Գիրք քառասուներորդ

5,1 *... Փրաատեսը ևս (դեսպաններ) ուղարկեց նրա (Պոմպեոսի)*
2 *մոտ՝ դաշինքը վերանորոգելու ցանկությամբ: Քանզի սա,*
*տեսնելով Պոմպեոսի այս հաջողությունները, և այն, որ նրա*
*տեղակալները[27] ևս շարունակում էին հնազանդեցնել Հայաս-*
*տանի և Պոնտոսի մնացած մասերը, և որ Գաբինիոսը[28] նույն-*
*պես անցնելով Եփրատը, առաջացել է մինչև Տիգրիս, վախ*
*զգաց նրանց հանդեպ և ցանկացավ հաշտության պայմաններ*
3 *հաստատել. այսուհանդերձ, նա ոչինչ չկարողացավ իրագոր-*
*ծել: Քանզի Պոմպեոսը, ելնելով առկա իրավիճակից, ինչպես*
*նաև հուսադրված այդ բոլորից, արհամարհեց նրան և գոռո-*
*զությամբ պատասխանեց դեսպաններին, իմիջիայլոց, պահան-*
*ջելով նաև Կորդուենե[29] երկիրը հանուն որի Փրաատեսը*
4 *վեճ ուներ Տիգրանի հետ: Եվ քանի որ նրանք ոչինչ չպատաս-*
*խանեցին, քանզի այդ մասին նրանք ոչ մի հանձնարարություն*
*չունեին, (Պոմպեոսը) մի գիր գրեց Փրաատեսին, բայց առանց*
*որևէ պատասխանի սպասելու, իսկույն Աֆրանիոսին ուղար-*
*կեց (Կորդուենե) երկիրը, և այն առանց մարտի գրա*
5 *վելուց հետո, հանձնեց Տիգրանին: Այսպիսի*
6,1 *վերաբերմունք ունեցավ Պոմպեոսը Փրաատեսի նկատմամբ իր*
*հզորության ժամանակ... և դրա հետ մեկտեղ արհամարհեց*
*նրա տիտղոսը[30], որով նա փառաբանվում էր մնացած բոլորի,*

*ինչպես նաև իրենց՝ Հռոմեացիների առաջ, որը և սրանք օգտագործում էին ամեն անգամ նրան դիմելիս:*
2 *Քանզի, մինչդեռ նա կոչվում էր «արքայից արքա»[31], (Պոմպեոսը) հատեց «արքայից» կոչումը և նրան հղած իր նամակում դիմեց նրան միայն «արքա» անվանելով: Դեռ ավելին. այդ տիտղոսը, հակառակ ընդունված կարգի, նա*
3 *շնորհեց գերեվարված Տիգրանին[32], երբ ինքը Հռոմում հաղթահանդեսը տոնեց: Այդ իսկ պատճառով Փրաատեսը, թեպետև վախենում էր նրանից և ձգտում էր սիրաշահել նրան, վշտացավ այդ դեպքից, ասես իր իսկ թագավորությունից զրկված լիներ, և դեսպաններ ուղարկելով, մեղադրում էր նրան իր կրած բոլոր անարդարությունների համար և համոզում նրան Եփրատը չանցնել:*
4 *Եվ քանի որ ոչ մի հաշտարար պատասխան չստացվեց, (Փրաատեսը) իսկույն արշավեց Տիգրանի վրա, սրա որդու ուղեկցությամբ, որին իր աղջկան էր (կնության) տվել[33], դա այն ամառանն էր, երբ կոնսուլ էին Լուկիոս Կեսարը և Գայոս Փիգուլոսը. նախ կռվում պարտվեց, բայց հետո նա գերազան-*
5 *ցություն ձեռք բերեց: Եվ երբ Տիգրանը դիմեց Ասորիքում գտնվող Պոմպեոսի օգնությանը, նա դարձյալ նրա մոտ դեսպաններ ուղարկեց և Տիգրանին շատ բաներում մեղադրեց, միաժամանակ նաև շատ ակնարկություններ արեց Հռոմեա-*
7,1 *ցիների դեմ. այնպես որ Պոմպեոսը և՛ ամաչեց, և՛ զարմացավ: Ուստի և ո՛չ Տիգրանին օգնություն ուղարկեց, ո՛չ էլ Փրաատեսի դեմ թշնամական որևէ բան ձեռնարկեց, պատճառաբանելով, թե իրեն չի կարգադրված այդպիսի մի արշավանք կատարել, և որ Միհրդատը դեռևս գտնվում է*
2 *զինված վիճակում: ... (Նա) վախենալով և ահաբեկված դեպքերի անկայունությունից, չձեռնարկեց պատերազմ, թեպետև շատերը նրան դրդում էին (այդ անել). միաժամանակ և բարբարոսի[34] գանգատներին ուշադրություն չդարձրեց, անպատասխան թողնելով. իսկ ինչ-որ սահմանների վերաբերյալ Տիգրանի հետ ունեցած նրա վեճի մասին ասաց, որ այդ հարցը*
3 *կկարգավորեն երեք մարդ, որոնց և նա ուղարկեց: Սրանց էլ (թագավորները) ընդունելով իբրև ճշմարիտ դատավորների, պարզեցին իրար նկատմամբ ունեցած բոլոր գանվատները: Տիգրանը զայրացել էր, որ ինքը օժանդակություն չէր գտել,*
4 *իսկ Փրաատեսը ցանկանում էր գերազանցել Հայոց (թագավո-*

*րին), այն հաշվով, որ անհրաժեշտ դեպքում նրան օգտագործի իբրև դաշնակցի հռոմեացիների դեմ: Քանզի նրանք երկուսն էլ լավ գիտեին, թե իրենցից ով որ մյուսին գերիշխի, դրանով նպաստած կլինի հռոմեացիների գործին և ինքն էլ նրանց կողմից առավել հեշտ կհպատակեցվի:*

5 *Այս նկատառումներով էլ նրանք իրար հետ հաշտվեցին:*

*1. Այսինքն՝ Ք. ա. 69 թվականին:*

*2. Հայաստանում նավթի օգտագործման մասին Դիոնի սույն վկայությունն իր հաստատումը գտավ Արտաշատի հնագիտական պեղումների ժամանակ: Արտաշատի պարիսպների մոտ հայտնաբերվել է մեծ քանակությամբ նավթ, որն արդեն ստացել էր սև, չորացած կուպրի տեսք:*

*3. Ինչպես արդեն նշել ենք (տե՛ս 342-րդ էջ, ծան. № 29) այս միջադեպը հնարովի է:*

*4. Խոսքը պարթևական հրահատ III թագավորի մասին է:*

*5. Ըստ ուսումնասիրողների, այս երկրամասը, հավանաբար, ընդգրկել է Տիգրան Մեծի՝ պարթևներից գրաված Միջագետքը, Ադիաբենեն և «Յոթանասուն հովիտները»:*

*6.* ***Պրետոր*** *– պաշտոն և պաշտոնական անձ հին հռոմում: Սկզբնապես կոնսուլների և դիկտատորների տիտղոս՝ անձ, որին պատկանում էր դատական գերագույն իշխանությունը, իսկ պրովինցիաների կազմակերպումից հետո՝ նաև դրանց կառավարումը: Սուլլայի ժամանակ պրետորների թիվը հռոմում հասնում էր ութի:*

*7. Դիոնի սույն վկայությունը խիստ կարևոր է. պարզվում է, որ Լուկուլլոսը Տիգրանակերտը գրավել է ոչ այնքան ռազմական ուժի միջոցով, որքան քաղաքում ապրող օտարերկրացիների ապստամբության հետևանքով (տե՛ս նաև 355-րդ էջ, ծան. № 6):*

*8. Խոսքը Կոմմագենեի Անտիոքոս I թագավորի (69-34) և արաբ իշխանավոր Ալքավդոնիոսի՝ Լուկուլլոսի մոտ ուղարկած դեսպանների մասին է:*

*9. Արածանիի ճակատամարտի մասին Դիոնն սույն հաղորդումը հիմնովին հակասում է Պլուտարքոսի համապատասխան վկայությանը (տե՛ս 343-րդ էջ, ծան. № 42), ըստ որի, իբր հայկական բանակն այստեղ ծանր պարտություն էր կրել: Այստեղ պարզվում է, որ հայկական բանակը ոչ միայն պարտություն չէր կրել, այլ, ընդհակառակն՝ ինքն էր ծանր հարված հասցրել հակառակորդին:*

*10.* ***Նիսիբիս*** *– հայկական աղբյուրների Մծբինն է՝ քաղաք հյուսիսային Միջագետքում:*

*11. Չնայած Դիոնը չի հիշատակում Տիգրան Մեծի եղբոր անունը, սակայն Պլուտարքոսը (տե՛ս Լուկուլլոս, XXXII) նրան անվանում էր Գուրաս:*

*12. Խոսքը Փոքր Հայքի մասին է:*

*13.* ***Գայոս Մանիլիոս*** *– Ք. ա. 66 թ. Հռոմի ժողովրդական տրիբուն:*

*14.* ***Պոմպեոս*** *(Պոմպեոս Գնեոս Մագնուս՝ 106–48) – հռոմեական զինվորական և քաղաքական գործիչ: Աչքի ընկնող դեր է կատարել Իսպանիայում Սերտորիուսի դեմ մղված պատերազմներում (77–72 թթ.), Սպարտակի ապստամբությունը ճնշելիս (71 թ.) և Միջերկրական ծովում ծովահենների դեմ պայքարելիս (67–66 թթ.): 66 թ. նշանակվել է Միհրդատ Եվպատորի և Տիգրան Մեծի դեմ գործող հռոմեական բանակների հրամանատար:*

*15.* ***Մետրոփանես*** *– Սա Միհրդատ Եվպատորի նախկին դեսպանն էր, որն այժմ ծառայում էր հռոմեացիներին:*

*16. Խոսքը պարթևական Հրահատ III թագավորի մասին է: Դիոնը շփոթում է. Հրահատի հայր Արշակ XII-ը (Սանատրուկ) մահացել էր ոչ թե 66 թվականին, այլ՝ 70:*

*17. Այսինքն՝ Փոքր Հայք, որն այն ժամանակ մտնում էր Պոնտական թագավորության կազմի մեջ:*

*18. «Անահտական երկիրը» պատմական Հայաստանի Եկեղյաց գավառն է (կամ նրա մի մասը), որը հայտնի էր Անահիտ աստվածուհու տաճարով և այնտեղ կատարվող տոնախմբություններով (տե՛ս* ***Ստրաբոն****, XI, 14, 16; XII, 3, 37):*

*19. Մինչ այդ, Պոմպեոսը հանձնարարել էր Մարկիոս Ռեքսին հռոմեական երեք լեգեոններով պաշտպանել Կիլիկիան և Կապադովկիան, իսկ այժմ, զգալով այդ զորամասերի կարիքը, Պոմպեոսը Մարկիոսին կանչում է օգնության:*

*20. Սա Տիգրան Կրտսերն է՝ Տիգրան II Մեծի և Կլեոպատրայի որդին:*

*21. Խոսքը հայկական ռազմաստրատեգիական ավազանու որոշ ներկայացուցիչների մասին է:*

*22. Նկատի ունի Տիգրան II Մեծին:*

*23. Հին Հռոմում մականակիրներ էին կոչվում բարձրաստիճան պաշտոնյայի առջևից գնացող հատուկ ծառայող անձինք, որոնք, իբրև իշխանության տարբերանշան, տանում էին ձողիկների մի կապոց՝ ծայրին կացին ամրացրած:*

*24. Խոսքը վերաբերում է Տիգրան II Մեծին:*

*25. Այսինքն՝ Պոմպեոսը:*

*26. Սա Կուր գետի անվան հունական ձևերից մեկն է:*

*27. Բնագրում՝ «ենթագորավարները»:*

*28.* ***Գաբինիոս*** *– Ք. ա. 67 թ. Հռոմի ժողովրդական տրիբուն, հռոմեական զորավար, որին Պոմպեոսը թողեց իր տեղապահը Արևելքում:*

*29.* ***Կորդուենե*** *(Կորդուք) – հայկական աղբյուրների «Կորդվաց աշխարհն» է՝ Մեծ Հայքի Կորճայք նահանգը: Տեղադրվում է Արևելյան Տիգրիսից հարավ:*

*30. Խոսքը վերաբերում է «արքայից արքա» տիտղոսին (տե՛ս հաջորդ ծա-*

*նոթագրությունը):*

*31. **«Արքայից արքա»** - տիտղոս, որ կրում էին պարթև Արշակունի թագավորներն սկսած Միհրդատ I-ից (171-138): Սակայն, երբ 87-86 թթ. Տիգրան II-ը ջախջախեց պարթևներին և գրավեց «Յոթանասուն հովիտները», Մարաստանն ու Միջագետքը՝ պարթևական թագավոր Գոտարզ I-ը (Գոդերձ՝ 87-80) ոչ միայն ընդունեց Հայաստանի գերիշխանությունը, այլև հրաժարվեց «արքայից արքա» տիտղոսից՝ հօգուտ Տիգրան II-ի: Այս տիտղոսը շարունակում էին կրել նաև Հայոց Արտավազդ II (55-34), Արտաշես II (30-20) և Տիգրան IV (8-5, 2-1) թագավորները:*

*32. Խոսքը Տիգրան Կրտսերի մասին է: Սակայն, Տիգրան Կրտսերը, ինչպես հայտնի է, երբեք էլ գահ չի բարձրացել, ուստի Պոմպեոսը փառասիրությունից դրդված է Տիգրանին չնորհել «արքայից արքա» տիտղոսը, որը վերջինս իրավունք չուներ կրելու:*

*33. Դիոնը ակնհայտորեն շփոթում է. 64 թ., երբ կատարվում էին այս հատվածում նկարագրվող դեպքերը, Տիգրան Կրտսերը չէր կարող Հրահատ III-ի մոտ եղած լինել, քանի որ նա դեռևս 66 թ. Պոմպեոսի կարգադրությամբ կալանավորվել էր ու ապա տարվել Հռոմ:*

*34. Խոսքը Պարթևաց Հրահատ III թագավորի մասին է:*

## ԱՆՏՈՆԻՈՍԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆ ԸՍՏ ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍԻ

### *ՀՐԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ*

### ***Գիրք առաջին***

*363* ***Ոչ շատ ժամանակ անց Անտոնիոսը վերադարձավ Պարթիայից[1]: Կլեոպատրայի համար որպես նվեր բերելով Տիգրանի որդի Արտաբազեսին[2], քանի որ դրամների և (պետարազմական) ամբողջ ավարի հետ միասին պարթևին[3] նրան պարգևեց:***

### *ՀՐԵԱԿԱՆ ՀՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ*

### ***Գիրք տասնհինգերորդ***

104 *Եվ Անտոնիոսը, Հայաստանը նվաճելուց հետո, Տիգրանի որ-
դի Արտաբազեսին՝ նրա որդիների ու սատրապների հետ միա-
սին կալանավոր ուղարկում է Եգիպտոս և Կլեոպատրային է
նվիրում նրանց, ինչպես նաև թագավորության ամբողջ զար-
դերը, որ հափշտակել էր այնտեղից։ Իսկ Հայաստանի թագա-
վոր դարձավ (Արտաբազեսի) անդրանիկ որդին՝ Ար-*
105 *տաքսիասը, որն այդ իրադարձությունների ժամանակ (կարո-
ղացել էր) փախչել։ Սրան էլ Արքելաոսը[4] և կեսար Ներոնը[5]
վտարեցին[6] և գահի վրա հաստատեցին նրա կրտսեր եղբայր
Տիգրանին[7]։*

*1. Այսինքն՝ Պարթևստանից։*

*2. Խոսքը Հայոց Արտավազդ II թագավորի մասին է։*

*3. Հովսեպոսը բացահայտորեն չփոթում է՝ Արտավազդին անվանելով պարթև։*

*4. Սա Կապադովկիայի Արքելաոս թագավորն էր (36-17)։ Գահ էր բարձրացել Անտոնիոսի աջակցությամբ։ Գործակցելով վերջինիս հետ՝ Արքալեոսը ստացավ նաև Փոքր Հայքի թագավորությունը և Կիլիկիայի մի մասը։*

*5.* ***Կեսար Ներոն*** *(Տիբերիոս Կլավդիոս Ներոն) – հռոմեական զորավար, որին Օգոստոսը Ք. ա. 20 թ. ուղարկել էր Հայաստանը հանդարտեցնելու։ Օգոստոսի որդեգիրը, հետագայում՝ Հռոմի կայսր (14-37)։*

*6. Հովսեպոսը սխալվում է, երբ գրում է, թե Կլավդիոսը Հայաստանից վտարեց Արտաշես II-ին։ Արտաշես II-ի բացահայտ հակահռոմեական քաղաքականությունը նրան ատելի էր դարձրել Հռոմի պաշտոնական շրջանակներում։ Այստեղ վաղուց դավեր էին նյութվում այս ինքնատիպ, գործուն և ուժեղ թագավորի դեմ։ Ըստ երևույթին, հենց Օգոստոսի ուղղակի ցուցումներով՝ հայ հռոմեասերները Ք. ա. 20 թ. դավադրություն կազմակերպեցին ու սպանեցին Արտաշեսին։*

*7. Խոսքը վերաբերում է Արտավազդ II-ի կրտսեր որդուն՝ Հռոմի կողմից Հայաստանի թագավոր հռչակված Տիգրան III-ին (20-8)։*

## ԱՆՏՈՆԻՈՍԻ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԸՍՏ ՊԼՈՒՏԱՐՔՈՍԻ

### *ՊԼՈՒՏԱՐՔՈՍ*

### *ԶՈՒԳԱՀԵՌ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### ԱՆՏՈՆԻՈՍ

*37. Երբ Փրաատեսը, սպանելով իր հորը, տիրացավ թագավորական իշխանությանը[1], շատ պարթևներ փախան հայրենիքից, նրանց թվում նաև Մոնեսեսը, ականավոր և հզոր մի մարդ[2]: Նա ապաստան գտավ Անտոնիոսի մոտ[3], որը նրա ճակատագիրը նմանեցնելով Թեմիստոկլեսի[4] ճակատագրին, իսկ իր իշխանությունը և մեծահոգությունը՝ պարսից արքաների մեծահոգությանն ու իշխանությանը, նրան պարգևեց երեք քաղաք՝ Լարիսսան, Արեթուսան և Տիերապոլիսը, որը նախկինում կոչվում էր Բամբիկե[5]: Բայց հետագայում պարթև թագավորը իր բարյացակամության հավաստիքներն ուղարկեց Մոնեսեսին, և Անտոնիոսը սիրահոժար նրան բաց թողեց Փրաատեսին խաբելու թաքուն նպատակով: Անտոնիոսը խնդրեց հաղորդել նրան, որ պատրաստ է դաշինք կնքելու, եթե պարթևները վերադարձնեն Կրասսոսի ջախջախման ժամանակ գրավված դրոշակները և այդ ժամանակից ողջ մնացած գերիներին[6]. իսկ ինքը, Կլեոպատրային[7] նորից Եգիպտոս ուղարկելով, Արաբիայի վրայով արշավեց Հայաստան, որտեղ հռոմեական զորքը հանդիպեց դաշնակից թագավորներին, որոնք մեծ թիվ էին կազմում և նրանց մեջ առաջին տեղը պատկանում էր Հայոց Արտավազդին, որը դուրս էր բերել վեց հազար հեծյալ և յոթ հազար հետևակ[8]: Անտոնիոսը զորատես կատարեց: Հռոմեական հետևակը վեց բյուր էր. դրան զորավիգ էր իսպանական և կելտական հեծելազորը՝ թվով մեկ բյուր. մնացած բոլոր դաշնակիցները, հեծյալներ ու թեթևազեններ, ընդամենը 3 բյուր էին: Այսպիսի վիթխարի ուժ, որը վախեցրել էր անգամ Բակտրիաներից այն կողմ բնակվող հնդիկներին և սարսափ տարածել ամբողջ Ասիայում, իզուր կորավ, ինչպես ասում են, Կլեոպատրայի պատճառով: Հիրավի, մտածելով սոսկ այն մասին, թե ձմեռն ինչպես անցկացնի նրա հետ միատեղ, Անտոնիոսը արշավանքն սկսեց ժամկետից շուտ[9] և շարունակեց գործել չպահպանելով անհրաժեշտ կարգուկանոնը, քանզի նա արդեն իր խելքի տերը չէր, այլ, ինչ-որ կախարդանքի կամ կախարդական դեղի ազդեցության տակ, հայացքն ուղղում էր դեպի Եգիպտոս և մտածում էր ոչ թե թշնամուն հաղթելու, այլ արագ վերադառնալու մասին:*

*38. Նախ և առաջ նա պետք է ձմեռեր Հայաստանում և հանգստի հնարավորություն տար զորքին, որը հոգնատանջ էր եղել, անցնելով 8 հազար ասպարեզ[10] ճանապարհ, իսկ գարնանամուտին, նախքան պարթևները դուրս կգային ձմեռային կայաններից, գրավել Մարաստանը: Բայց Անտոնիոսը չսպասեց մինչև անհրաժեշտ ժամանակը, այլև անհապաղ շարժվեց առաջ, Հայաստանը թողնելով ձախ կող-*

*մում, և, հասնելով Ատրոպատենե, սկսեց երկիրն ավերել։ 300 սայլի վրա տանում էին պաշարողական մեքենաներ, այդ թվում և 80 ոտնաչափանոց խոյ, բայց եթե դրանցից որևէ մեկը վնասվեր, այն վերանորոգել անհնար կլիներ, քանի որ Ներքին Ասիայում չկան անհրաժեշտ ամրության ու երկարության անտառներ, և Անտոնիոսը, ում այս գումակը միայն ծանրություն էր պատճառում և ուշացնում, այն թողեց Ստատիանոսի գլխավորած պահակային ջոկատին, իսկ ինքը պաշարեց խոշոր քաղաք Փրաասպան[11], որտեղ գտնվում էին մարերի թագավորի կանայք ու որդիները։ Ամենակարճ ժամանակում բացահայտվեց, թե նա ինչպիսի վիթխարի սխալ գործեց մեքենաները թողնելով և այդպես քաղաքին կիպ մոտենալով. Անտոնիոսն սկսեց հողաթումբ բարձրացնել, բայց աշխատանքն ընթանում էր դանդաղ և շատ ծանր։ Փրաատեսն արդեն մեծ զորքով մոտենում էր պաշարվածներին օգնելու և, տեղեկանալով, որ մեքենաներով բեռնված սայլերը լքված են, հեծյալների ուժեղ զորաջոկատ ուղարկեց, որը օղակեց Ստատիանոսին և կոտորեց մեկ բյուր հռոմայեցի զինվորների։ Ինքը Ստատիանոսը նույնպես սպանվեց, բարբարոսները ջարդուփշուր արեցին մեքենաները։ Բայց մեքենաներից, նրանց ձեռքն ընկան մեծ թվով գերիներ, որոնց թվում նաև Պոլեմոն թագավորը[12]։*



**Կլեոպատրա VII**

*39. Այս անակնկալ անհաջողությունը գործի հենց սկզբից, հասկանալի է, խոր վհատության մեջ գցեց Անտոնիոսին և նրա մարդկանց, իսկ Հայոց թագավոր Արտավազդը, հռոմեացիների գործը համարելով տանուլ տված, հավաքեց բոլոր յուրայիններին և հեռացավ, թեև պատերազմի գլխավոր մեղավորը հենց ինքն էր։*

*49. ...Եզրափակիչ մարտից հետո վեցերորդ օրը հռոմայեցիները հասան Արաքս գետը, որը Մարաստանը բաժանում է Հայաստանից։*

*Գետը թվաց խորահուն և կատաղած, իսկ բացի այդ, լուր էր պտտվում, թե թշնամին դարանակալել է՝ գետանցման ժամանակ հարվածելու համար: Իսկ երբ բարեհաջող հասնելով գետի հանդիպակաց ափը, ոտք դրեցին հայկական հողի վրա, այնժամ, ասես բաց ծովում երկար թափառումներից հետո առաջին անգամ ցամաք տեսած, նրանք համբուրում էին քարերն ու ավազը և, իրար գրկելով, ուրախությունից լաց լինում: Այնուհետև ընթանալով հարուստ ու ծաղկուն երկրի միջով, նրանք այդքան դաժան զրկանքներից հետո խիստ չատ կերան ու խմեցին, ուստիև հիվանդացան ջրգողությամբ ու փորհարությամբ:*

*50. Այստեղ Անտոնիոսն իր զորքի հաշվառում կատարեց, և պարզվեց, որ կորցրել է երկու բյուր հետևակ ու չորս հազար հեծյալ: Սրանք բոլորը չէ, որ ընկել էին մարտերում. կեսից ավելին մահացել էր հիվանդություններից: Փրաասպայի մոտի ճամբարից դուրս գալուց հետո հռոմայեցիները ճանապարհին էին քսանյոթ օր, որի ընթացքում պարթևների դեմ տարան տասնութ հաղթանակ, բայց այդ բոլորը ո՛չ հաստատուն, ո՛չ հուսալի հաղթանակներ էին, քանի որ Անտոնիոսը չկարողացավ ինչպես հարկն է հետապնդել ջախջախված թշնամուն: Այս հանգամանքն էլ առանձնապես համոզիչ կերպով ցույց է տալիս, որ արշավանքի անհաջողության պատճառը հայ Արտավազդն էր: Եթե Անտոնիոսի տրամադրության տակ մնային վեց հազար այն հեծյալները, որոնց Մարաստանից իր հետ բերել էր Արտավազդը և որոնք զինված էին գրեթե այնպես, ինչպես պարթևները ու սովոր էին նրանց դեմ մարտ վարելու, ապա հռոմայեցիները բաց ճակատամարտում կջարդեին թշնամուն, իսկ հայերը*



***Մարկոս Անտոնիոս***

*կկոտորեին փախչողներին, և թշնամիները ի վիճակի չէին լինի մարտերում այսքան պարտություններից հետո վերականգնել իրենց ուժերը: Բնականաբար, բոլորը ցասումով էին լցված և դրդում էին Անտոնիոսին հաշվեհարդար տեսնել Հայոց Թագավորի հետ: Բայց Անտոնիոսը լավ գիտեր, որ իր գործը Թուլացել է և ամենաանհրաժեշտի կարիքն ունի, ուստի և անսալով ողջամտությանը, ոչ մի բառով չմեղադրեց Արտավազդին դավաճանության մեջ*[13]*, այլ առաջվա նման սիրալիր էր և Թագավորին մատուցեց պատշաճ պատիվներ: Հետագայում, սակայն, նորից մտնելով Հայաստան, նա բազում խոստումներով ու հավաստիացումներով համոզեց Արտավազդին հանձնվել իրեն, բայց հետո բանտարկեց նրան ու շղթայակապ բերեց Ալեքսանդրիա և անցկացրեց իր հաղթահանդեսի շարասյան մեջ*[14]*: Այս արարքով նա դաժանորեն վիրավորեց հռոմայեցիներին, որոնք տեսան, թե ի հաճույս Կլեոպատրայի նա եգիպտացիներին շնորհեց հիասքանչ ու վեհ հանդիսություն, որն օրենքով պատկանում էր հայրենիքին:*

*54. ... Անտոնիոսը ատելության ևս մի ալիք առաջացրեց իր որդիների միջև երկրներ բաժանելուց, ինչը կատարվեց Ալեքսանդրիայում ամբողջապես ցուցադրական չքեղությամբ, մեծամտությամբ և Թշնամանքով հռոմեական ամեն ինչի հանդեպ*[15]*: Մարզարանը (Գիմնասիոն)*[16] *ամբոխով լցնելով, արծաԹյա բեմի վրա ոսկե երկու գահ կանգնեցնելով, մեկը իր, մյուսը՝ Կլեոպատրայի համար, նա, ամեն ինչից առաջ Կլեոպատրային հայտարարեց Եգիպտոսի, Կիպրոսի, Աֆրիկայի և Կելեսիրիայի Թագուհի՝ Կեսարիոնի գահակցությամբ. վերջինս համարվում էր ավագ Կեսարի որդին. ասում էին, Թե Կեսարն է հղիացրել Կլեոպատրային: Այնուհետև, իրենից ունեցած Կլեոպատրայի որդիներին նա հռչակեց արքայից արքաներ, Ալեքսանդրին՝ Հայաստանի, Մարաստանի և ՊարԹևստանի (հենց որ այդ երկիրը նվաճվեր), իսկ Պտղոմեոսին՝ Փյունիկիայի, Ասորիքի և Կիլիկիայի: Անտոնիոսն Ալեքսանդրին դուրս բերեց մարական հանդերձով, տիարայով և կիդարիսով, Պտղոմեոսին՝ երկարաճիտ կոշիկներով, մակեդոնական Թիկնոցով և խույրով զարդարված կավսիայով: Սա Ալեքսանդրի հետնորդների տարազն էր, իսկ այն առաջինը՝ Մարաստանի և Հայաստանի Թագավորների տարազը: Մանչուկները ողջունում էին ծնողներին, և մեկին շրջապատել էին հայ Թիկնապահներ, մյուսին՝ մակեդոնացի: Կլեոպատրան այդ օրը, ինչպես միշտ, երբ հայտնվում էր մարդկանց առաջ, հագել էր Իսիսի*[17] *սրբազան զգեստը. նա իրեն նույնպես կոչում էր Նոր Իսիս:*

*1. Պարթևաց թագավոր Օրոդես II -ի սպանությունը և Հրահատ IV -ի գահ բարձրանալը տեղի է ունեցել Ք. ա. 38 թվականին:*

*2. Ուսումնասիրողները կարծում են, որ Մոնեսի փախուստը Անտոնիոսի մոտ՝ սոսկ մի խաղ է եղել, որի նպատակն էր հռոմեական կողմի իրավիճակի խոր հետազոտությունը:*

*3. **Մարկոս Անտոնիոս** (83-30) - հռոմեական քաղաքական ու ռազմական գործիչ, Հուլիոս Կեսարի մերձավորագույն մարդկանցից մեկը, 44 թ. կոնսուլ, երկրորդ եռապետության (43 թ.) կազմակերպիչներից մեկը, 41 թ. նշանակվել է Սիրիա պրովինցիայի պրոկոնսուլ:*

*4. Խոսքը աթենական պետական գործիչ և զորավար Թեմիստոկլեսի (525-460) մասին է:*

*5. Նշված երեք քաղաքներն էլ գտնվում են Ասորիքում: Պլուտարքոսը տվյալ հատվածում նկատի ունի այն հանգամանքը, որ հալածական Թեմիստոկլեսը ապաստան գտնելով պարսից Արտաքսերքսես I թագավորի (465-424) մոտ՝ նրանից ընծա ստացավ երեք քաղաքներ:*

*6. Խոսքը 53 թ. մայիսի 6-ին Խառան քաղաքի մոտ Կրասսոսի բանակի ջախջախումից հետո պարթևների կողմից գերի վերցրած 10 հազար հռոմեացի զինվորների մասին է:*

*7. Կլեոպատրա VII-ը դուստրն էր Եգիպտոսի թագավոր Պտղոմեոս XII Սրնգահարի (Ավլետես), որի մահից հետո (51 թ.) դառնում է իր եղբոր՝ Պտղոմեոս XIII-ի գահակիցը (51-47), իսկ այնուհետև գահընկեց անելով եղբորը՝ սկսում է իշխել միանձնորեն (47-30): Եղել է Հուլիոս Կեսարի սիրուհին, ապա Մարկոս Անտոնիոսի կինը:*

*8. Այսինքն՝ 13 հազար զինվոր: Ինչպես տեսնում ենք, Արտավազդը եռակի անգամ պակաս զինվոր էր տրամադրում Անտոնիոսին, քան Կրասսոսին:*

*9. Անտոնիոսի զորաբանակը Կարնո դաշտից, որտեղ գտնվում էր նրա ճամբարը, դուրս եկավ 36 թվականի հունիսի կեսերին:*

*10. Այսինքն՝ մոտավորապես 1350 կմ (ստադիոնը հավասար է 185 մետրի):*

*11. Փրաասպան Ատրպատականի մայրաքաղաքն էր:*

*12. Սա Ք. ա. 38 թվականին Անտոնիոսի կողմից Պոնտոսի թագավոր հռչակված Պոլեմոն I -ն էր:*

*13. Տե՛ս 390-րդ էջ, ծան. № 15:*

*14. Անտոնիոսի հաղթահանդեսը Ալեքսանդրիայում կազմակերպվեց 34 թվականի աշնանը:*

*15. Այս արարողությունը պատմության մեջ հայտնի է «Ալեքսանդրիայի նվիրատվություններ» անվամբ:*

*16. **Գիմնասիոն** - ուսումնամարզական բացօթյա հաստատություն Հին Հունաստանում և հելլենիստական Արևելքի երկրներում:*

*17. Իսիսը (Իսիդա) հին եգիպտական դիցարանի գլխավոր աստվածուհիներից մեկն էր: Համարվում էր ննջեցյալների թագավորության աստծո՝ Օսիրիսի քույրն ու կինը, պտղաբերության, արգասավորության և մարդկանց մահից պաշտպանող աստվածուհի:*

## ԿՐԱՍՍՈՍԻ ԵՎ ԱՆՏՈՆԻՈՍԻ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐՆ ՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԸՍՏ ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍԻ

*ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

### Գիրք քառասուներորդ

16,1 *Կրասսոսը[1] երբ ներխուժեց Միջագետք, ինչպես ասվել է, Օրոդեսը[2] նրա մոտ, Սիրիա, դեսպաններ ուղարկեց, մեղադրելով նրան ներխուժման համար և պահանջեց հայտնել պատերազմի պատճառները. միաժամանակ նա Սուրենին[3] զորքով ուղարկեց նվաճված և ապստամբած շրջանները.*
2 *քանզի ինքը մտադիր էր արշավել Հայաստան, որը մի ժամանակ Տիգրանի[4] երկիրն էր, որպեսզի Արտավազդը՝[5] Տիգրանի որդին, որն այդ ժամանակ թագավորում էր (այնտեղ), իր սեփական երկրի վիճակով մտահոգված, որևէ*
3 *օգնություն չուղարկի հռոմեացիներին: Բայց Կրասսոսը պատասխանեց նրան, թե պատերազմի պատճառը կհայտնի Սելևկիայում[6]. սա քաղաք է Միջագետքում, որի բնակչության մեծագույն մասը այժմ ևս հելլենական է: Եվ պարթևներից մեկը իր ձախ ափին մյուս ձեռքի մատներով խփեց ու նրան պատասխանեց, թե՝ «ավելի հեշտ այստեղ մազեր կբուսնեն, քան դու կլինես Սելևկիայում»:*

### Գիրք քառասունիններորդ

25,1 *Եվ նա[7] առաջացավ մինչև Եփրատ, կարծելով թե այն զուրկ էր պահակազորներից: Իսկ երբ նա համոզվեց, թե գետի ամբողջ շրջանը խստորեն պահպանվում է, ետ դարձավ. բայց նա որոշեց արշավանք ձեռնարկել մեդացիների թագավոր Արտավազդի[8] դեմ, որը թշնամի էր Մեծ Հայքի իրեն անվանակից թագավորին[9]. ուստի և այդ վիճակում նա խկույն շարժվեց դեպի Հայաստան և այնտեղ իմանալով, որ Մեդացին*
2 *շատ էր հեռացել իր հայրենի երկրից, դաշնակից պարթև (թագավորին)[10] օժանդակելու համար, իր գումակը և զորքի մի մասը թողեց Օպպիոս Ստատիանոսի հետ, պատվիրելով նրանց հետևել իրեն, մինչդեռ ինքը, վերցնելով հեծելազորը և հետևակի հզորագույն մասը, շտապեց առաջ, համոզված, որ առանց դիմադրության կգրավի թշնամու (ամրությունները). և*

*3 նա, նետվելով նրանց արքայանիստ Փրաասպա[11] (քաղաքի)*
*վրա, սկսեց հողաթմբեր պատրաստել և հարձակումներ գործել:*
*Այդ բոլորի մասին տեղեկանալով, Պարթևն ու Մեդացին թույլ*
*4 տվեցին, որ նա իզուր չարչարվի, քանզի պարիսպները հզոր*
*էին և նրանց կողմից լավ էին պաշտպանվում, բայց և այնպես՝*
*անսպասելի հարձակվեցին Ստատիանոսի վրա, երբ սա*
*ճանապարհին էր ու հոգնած, և բոլորին սպանեցին, բացի*
*Պոնտոսի թագավոր Պոլեմոնից[12], որն այդ ժամանակ միացել*
*էր (Ստատիանոսի) արշավանքին. միայն սրան կենդանի*
*5 գերեցին և փրկագին ստանալով՝ ազատ արձակեցին: Նրանք*
*կարողացան այս անել, քանի որ Արմենը[13] ներկա չեղավ կռվին,*
*բայց և, ինչպես ասում են ոմանք[14], նա կարող էր օգնել*
*Հռոմեացիներին, սակայն ոչ այդ արեց, ոչ էլ եկավ Անտոնիոսի*
*մոտ, այլ մեկնեց տուն:*
*31,2 Ինչ վերաբերում է Արմենին, թեպետև (Անտոնիոսը) նրա վրա*
*զայրացած էր, որովհետև նա իրենց լքել էր[15], ու թեև*
*ցանկանում էր պատժել նրան, այնուամենայնիվ սիրաշահեց*
*նրան և հարգանք մատուցեց, որպեսզի նրանից կենսամթերք և*
*3 դրամ ստանա և, վերջապես, քանի որ զինվորները չէին կարող*
*դիմանալ ավելի երկար ճանապարհի և այն էլ ձմռանը, մյուս*
*կողմից էլ պետք է իզուր տանջվեին, քանզի նա մտադիր էր*
*կարճ ժամանակ անց վերադառնալ Հայաստան, նրան մեծա-*
*պես շողոքորթեց, միաժամանակ բազում խոստումներ տվեց,*
*որպեսզի (թագավորը) թույլ տա իրենց ձմեռել (իր) երկրում,*
*4 ասելով, որ գարնանը նա նորից պետք է արշավի պարթևների*
*դեմ:*
*33,1 Այդ ժամանակ նա այդպես վարվեց. իսկ հաջորդ տարին[16],*
*երբ կոնսուլներ էին Պոմպեոսը և Կոռնուֆիկիոսը, (Ան-*
*տոնիոսը) արշավանք ձեռնարկեց (Արտավազդ) Արմենի դեմ,*
*մեծապես հույս դնելով Մեդացու վրա, որը զայրացած էր*
*Փրաատեսի դեմ, որովհետև սա ավարից իրեն շատ բաժին չէր*
*տվել և ոչ իսկ որևէ այլ ձևով պատվել, և միաժամանակ նա*
*կամենում էր (Արտավազդ) Արմենին պատժել՝ Հռոմեացիներին*
*(իր երկրի դեմ) բերած լինելու համար. ուստի նա Պոլեմոնին*
*2 ուղարկեց Անտոնիոսի մոտ, բարեկամություն և զինակցություն*
*հայցելու: (Անտոնիոսը), իհարկե, այնպես ուրախացավ այս*
*առիթից, որ ոչ միայն նրա հետ դաշինք կնքեց, այլև փոքր-ինչ*
*ուշ Պոլեմոնին, որպես վարձատրություն նրա միջնորդության,*

*տվեց Փոքր Հայքը[17]: Արդ՝ (Արտավազդ) Արմենին նա նախ*
*հրավիրեց Եգիպտոս իբրև բարեկամի, որպեսզի նրան առանց*
*դժվարության ձեռք գցելով, այնտեղ ոչնչացնի. բայց քանի որ*
*սա, կռահելով այդ ամենը, հրավերին չպատասխանեց, նա*
3 *մտածեց մի այլ ձևով խաբել նրան: Ուստի և (Անտոնիոսն) իր*
*զայրույթը նրա հանդեպ բացահայտ ցույց*
*չէր տալիս, որպեսզի չթշնամանա իր*
*հետ. բայց նրան անպատրաստ*
*գտնելու նպատակով նա*
*չարժվեց Եգիպտոսից, իբրև*
*թե արշավում էր*
*պարթևների դեմ:*
*Ճանապարհին, սակայն,*
*տեղեկանալով, որ*
*Օկտավիան[18] Հռոմից*
*ժամանում է, այլևս առաջ*
*չշարժվեց, այլ ետ*
*վերադարձավ:*

* * *

***Արտաշես II***

*39,1 Մինչ այդ Անտոնիոսը*
*նույն օրն իսկ հրաժարվեց իշխա-*
*նությունից[19], իր փոխարեն կարգելով Լուկիոս Սեմպրոնիոս*
*Ատրատինոսին, այստեղից էլ ահա, ոմանք կոնսուլներին*
*թվարկելիս ոչ թե Անտոնիոսի, այլ Սեմպրոնիոսի անունն են*
2 *տալիս: Որպեսզի կարողանա (Արտավազդ) Արմենից առանց*
*դժվարության վրեժ լուծել, (Անտոնիոսը) նրա մոտ ուղարկեց*
*ոմն Կվինտոս Դելլիոսին, որը մի ժամանակ իր սիրելին էր եղել,*
*խնդրելով նրա աղջկան[20] կնության տալ իր Ալեքսանդր որ-*
*դուն[21], և խոստանում է նրան շատ պարգևներ շնորհել: Եվ, ի*
*վերջո, գարնանամուտին նա հանկարծ եկավ Նիկոպոլիս[22], որը*
3 *հիմնել էր Պոմպեոսը, և նրան հրավիրեց այնտեղ, իբրև թե նրա*
*հետ խորհրդակցելու և պարթևների դեմ համագործակցելու*
*նպատակով: Ու քանի որ (Արտավազդը), կասկածելով դա-*
*վադրության մասին, նրա մոտ չժամանեց, ապա նա նորից*
*Դելլիոսին ուղարկեց բանակցություններ վարելու համար և*
*ինքն էլ ոչ պակաս շտապողականությամբ առաջացավ դեպի*

4 *Արտաշատ: Այս կերպ, վերջապես, երկար ժամանակ հետո, թե՛*
*բարեկամների միջոցով նրան համոզելով, թե՛ իր զորքերով*
*երկյուղ պատճառելով և թե՛, ընդհանրապես, իբրև բարեկամի*
*նամակ գրելով և ամեն միջոց գործադրելով, նրան հարկադրեց*
5 *գալ իր ռազմական ճամբարը: Եվ այստեղ ձերբակալելով նրան,*
*սկզբում պահում էր առանց կապանքների և շրջագայում նրա*
*հետ այն ամրոցները, որտեղ գտնվում էին գանձերը, որպեսզի*
*կարողանա դրանք ստանալ առանց պատերազմի, արդա-*
*րանալով, որ իբր նրան ձերբակալել է միայն այն պատճառով,*
6 *որպեսզի հայերին հարկադրի տուրք վճարել նրա անձի և նրա*
*թագավորության փրկության համար: Իսկ երբ գանձերի*
*պահապանները ուշադրություն չդարձրին նրան և զենք կրող-*
*ներն էլ (Արտավազդի) փոխարեն թագավոր հայտարարեցին*
*նրա որդիներից ավագագույնին՝ Արտաշեսին*[23], *(Անտոնիոսը)*
*Արտավազդին կապեց արծաթե շղթաներով, քանզի թվում էր,*
*թե ամոթալի կլիներ նրան, որ թագավոր էր եղել, կապել*
*երկաթի շղթաներով:*
40,1 *Եվ այնուհետև (Անտոնիոսը) տիրացավ ամբողջ Հա-*
*յաստանին, ոմանց հոժարակամ, ուրիշներին բռնությամբ*
*նվաճելով, իսկ Արտաշեսը, քանի որ պատերազմի բռնվեց, բայց*
*պարտվեց, փախավ Պարթևի*[24] *մոտ: Այս բոլորն անելուց հետո*
*(Անտոնիոսը) իր որդուն նշանեց Մեդացու աղջկա*[25] *հետ,*
2 *որպեսզի նրա հետ առավել սերտ բարեկամություն հաստատի.*
*և ապա իր լեգեոնները թողեց Հայաստանում ու վերադարձավ*
*Եգիպտոս, իր հետ տանելով թե՛ այլ առատ ավար և թե՛*
3 *Արմենին՝ իր կնոջ ու որդիների*[26] *հետ: Եվ մյուս գերիների հետ*
*սրանց ևս իր առջևից Ալեքսանդրիա ուղարկելով իբր*
*հաղթահանդեսի շքերթի համար, ինքը քաղաք մտավ*
*մարտակառքի վրա. և բացի այլ ամենից, որ շնորհեց Կլեո-*
*պատրային, նրան բերեց ընտանյոք հանդերձ նաև Արմենին,*
*որը ոսկե կապանքների մեջ էր: Իսկ (Կլեոպատրան) նստած էր*
*բազմության մեջտեղ, արծաթապատ բեմում, ոսկեզօծ*
*գահավորակի վրա: Սակայն բարբարոսները*[27] *ոչ աղերսեցին*
*նրան, ոչ իսկ երկրպագեցին, թեպետև նրանց շատ էին*
*ստիպում և շատ էին հուսադրում՝ ազատություն խոստա-*
*նալով, ու որովհետև նրան պարզապես իր անունով կոչեցին*[28],
*նրանք վեհամիտ մարդկանց համբավ շահեցին, բայց և նույն*
*այդ պատճառով ենթարկվեցին խիստ չարչարանքների:*

41,1 Այս բանից հետո Անտոնիոսը խնջույքով պատվեց ալեքսանդրիացիներին և հավաքույթի ժամանակ իր կողքին բազմեցրեց Կլեոպատրային ու նրա որդիներին և դիմելով ժո-
2 ղովրդին, կարգադրեց, որպեսզի նրան կոչեն արքայից թագուհի, իսկ Պտղոմեոսին, որին Կեսարիոն[29] անունն էին տվել, կոչեն արքայից արքա: Այնժամ (պրովինցիաների) մի նոր բաժանում կատարելով, նրանց պարգևեց Եգիպտոսը, ինչպես նաև Կիպրոսը:
3 Իսկ Կլեոպատրայից ծնված իր որդիներին խոստացավ տալ (հետևյալ երկրները). Պտղոմեոսին՝ Սիրիան ու Եփրատից այս կողմ գտնվող բոլոր երկրները՝ մինչև Հելլեսպոնտոս, Կլեոպատրային՝ Կյուրենե երկիրը Լիբիայում, իսկ նրանց եղբայր Ալեքսանդրին՝ Հայաստանը ու Եփրատից այն կողմ ընկած բոլոր երկրները՝ մինչև Հնդկաստան. և այս ամենը նա
4 պարգևում էր, կարծես արդեն նվաճած լիներ[30]:

1. **Կրասսոս** – տե՛ս 364-րդ էջ, ծան. № 1:

2. **Օրոդես** – պարթևական Օրոդես II (Արշակ XIV) թագավորն է (57-38):

3. Պարթև տաղանդավոր զորավար: Արշակունի տոհմից հետո, իր նշանակությամբ երկրորդ՝ Սուրեն տոհմի ներկայացուցիչ: Սուրեն տոհմին էր վերապահվում պարթևական արքաներին թագադրելու պատիվը (տե՛ս **Պլուտարքոս**, Կրասսոս, XXI):

4. Խոսքը Տիգրան II Մեծի մասին է:

5. Այսինքն՝ Հայոց Արտավազդ II թագավորը:

6. Սա Սելևկյան թագավորների հիմնադրած համանուն Սելևկիա քաղաքներից մեկն էր, հելլենիստական աշխարհի խոշորագույն քաղաքային կենտրոններից մեկը: Այն գտնվում էր Տիգրիսի աջ ափին՝ Տիզբոնի դիմաց և հանդիսանում էր պարթև Արշակունիների ձմեռային նստավայրը:

7. Խոսքը վերաբերում է հռոմեական քաղաքական ու ռազմական գործիչ Մարկոս Անտոնիոսին, որը Ք. ա. 43 թ. Գայոս Օկտավիանոսի և Մարկոս Լեպիդոսի հետ կազմել է երկրորդ եռապետությունը:

8. Սա Ատրպատական-Մարաստանի (Մեդիա-Ատրոպատենե) թագավոր Արտավազդն էր:

9. Խոսքը վերաբերում է Հայաստանի թագավոր Արտավազդ II-ին:

10. Այսինքն՝ պարթևների Հրահատ IV թագավորը (38-2):

11. **Փրաասպա** – Ատրպատականի մայրաքաղաքն է. տեղադրվում է Կապուտան (Ուրմիա) լճի հարավարևելյան կողմում:

12. Պոնտոսի Պոլեմոն I թագավորն է: Սա հռետորի որդի էր՝ Կիլիկիայի Լաոդիկեա քաղաքից: 40 թ. Անտոնիոսը նրան շնորհում է Կիլիկիայի մի մասի, իսկ

*այնուհետև՝ նաև Պոնտոսի թագավորությունը:*

*13. Խոսքը Արտավազդ II-ի մասին է:*

*14. Դիոնը հավանաբար նկատի ունի Պլուտարքոսին:*

*15. Հունա-հռոմեական մատենագիրներն ու նրանց հետևությամբ նաև նոր ժամանակների որոշ հետազոտողներ Արտավազդի սույն արարքը գնահատել են որպես դասալքություն և անգամ դավաճանություն: Ճիշտ է նկատված, որ այս վարկածի ակունքը Անտոնիոսն է: Պարթևական ձախողված արշավանքի ամբողջ պատասխանատվությունը Անտոնիոսը փորձում էր բարդել Արտավազդ II-ի վրա, որը, իրականում, չէր ցանկանում գործիք դառնալ հռոմեական նվաճողական քաղաքականությանը և ձգտում էր վարել չրջահայաց չեզոքություն:*

*16. Այսինքն՝ Ք. ա. 35 թվականին:*

*17. Փոքր Հայքի թագը Անտոնիոսը Պոլեմոնին շնորհել է 33 թվականին:*

*18. **Օկտավիա** – Գայոս Օկտավիանոսի քույրն է, որը 40 թ. Բրունդիզինյան համաձայնագրից հետո ամուսնացել էր Անտոնիոսի հետ: Սակայն Օկտավիանոսի և Անտոնիոսի հարաբերությունների վատթարացման հետևանքով՝ վերջինս 37 թ. ապահարզան է տվել Օկտավիային:*

*19. Խոսքը կոնսուլի պաշտոնի մասին է, որից Անտոնիոսը հրաժարվեց 34 թվականին:*

*20. Խոսքը Արտավազդ II-ի դստեր մասին է:*

*21. Սա Անտոնիոսի և Եգիպտոսի թագուհի Կլեոպատրա VII-ի որդին էր, որին անվանում էին Ալեքսանդր Հելիոս:*

*22. **Նիկոպոլիս** (հայերեն բառացի թարգմանությամբ՝ «Հաղթության քաղաք») – հիմնել է Գնեոս Պոմպեոսը Միհրդատ VI Եվպատորին հաղթելու վայրում: Տեղադրվում է Փոքր Հայքում՝ Գայլ գետից հարավ, Էնդերեսից մոտ 10 կմ հեռավորության վրա:*

*23. Սա Հայոց թագաժառանգ Արտաշեսն էր, հետագայում՝ Հայաստանի թագավոր Արտաշես II-ը (30-20):*

*24. Խոսքը պարթևների Հրահատ IV թագավորի մասին է:*

*25. Սա Մար Արտավազդի դուստր Իոտապեն էր:*

*26. Այսինքն՝ Արտավազդ II-ի կինը (Հայոց թագուհին) և երկու որդիները՝ արքայազուններ Տիգրանն ու Արտավազդը:*

*27. Նկատի ունի Արտավազդ II-ին ընտանյոք հանդերձ, որոնք ներկայացված էին 34 թ. Ալեքսանդրիայում Անտոնիոսի կազմակերպած «հաղթահանդեսին»:*

*28. Այսինքն՝ հայերը հրաժարվեցին Կլեոպատրային անվանել թագուհիների թագուհի:*

*29. **Կեսարիոն** – Կլեոպատրայի և Հուլիոս Կեսարի որդին, Անտոնիոսի որդեգիրը: Ք. ա. 30 թ. Ալեքսանդրիան գրավելուց հետո՝ Օկտավիանոսի կարգադրությամբ Կեսարիոնը գլխատվեց:*

*30. Դառը ճակատագիր էր սպասում Կլեոպատրայի և Անտոնիոսի զավակնե-*

*րին։ Անտոնիոսի և Կլեոպատրայի ինքնասպանությունից հետո, Օկտավիանոսի կարգադրությամբ գլխատվեց Անտոնիոսի ավագ որդին՝ Անտուլը, իսկ Կլեոպատրայից ծնված «Հայաստանի թագավոր» Ալեքսանդր Հելիոսը, Կլեոպատրա-Սելենեն և Պտղոմեոս Փիլադելփոսը գերեվարվեցին Հռոմ և ներկայացվեցին Օկտավիանոսի այստեղ կազմակերպած հանդիսահանդեսին։ Հետագա տարիներին նրանք դաստիարակվում ու կրթվում էին Օգոստոսի պալատում։*

## ԽՈՐԵՆԱՑԻՆ ՏԻԳՐԱՆ ՄԻՋԻՆԻ (ԵՐԿՐՈՐԴ) ԵՎ ԱՐՏԱՎԱԶԴ ԵՐԿՐՈՐԴԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԺԴ*

### ՏԻԳՐԱՆ ՄԻՋԻՆԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ, ՀՈՒՆԱՑ ԶՈՐՔԵՐԻՆ ԴԻՄԱԳՐԱՎԵԼԸ,... ԵՎ ՊԱՂԵՍՏԻՆ ԱՐՇԱՎԵԼԸ

*Արտաշես Առաջինից հետո թագավորում է նրա Տիգրան[1] որդին՝ պարսից Արշական թագավորի քառասունիններորդ տարում[2]։ Հայոց զորքերը ժողովելով՝ նա գնում է Հունաց[3] զորքերի դեմ, որոնք նրա հոր՝ Արտաշեսի մահից և նրա զորքերի ցրվելուց հետո՝ նրանց հետապնդելով մեր երկրի վրա էին գալիս։ Տիգրանը նրանց դեմ դուրս գալով՝ նրանց արշավանքն արգելում է և ետ է մղում։ Իր քրոջ ամուսնուն՝ Միհրդատին[4] վստահելով Մաժաքը[5] և Միջերկրյա[6] կողմերը և շատ զորք նրա մոտ թողնելով դառնում է մեր երկիրը։*

*(Այդտեղից) անմիջապես դիմում է Պաղեստին աշխարհը Պտղոմյան Կլեոպատրայից[7] վրեժ առնելու՝ նրա Դիոնիս որդու գործած հանցանքի համար իր հոր (Արտաշեսի) դեմ։ Հրեաներից շատ գերի վերցնելով շրջապատում է Պտղոմայիդ քաղաքը։ Իսկ հրեաների Աղեքսանդրիա կամ Մեսաղինա թագուհին[8], որ Հուդա Մակաբեի Շմավոն եղբոր որդի Հովհաննեսի որդի Աղեքսանդրի կինն էր եղել և այդ ժամանակ գրավում էր հրեական թագավորությունը՝ մեծ գանձ տալով (Տիգրանին) այնտեղից ետ դարձրեց։ Որովհետև (Տիգրանը) լսել էր, թե Վայկուն[9] անունով մի ավազակ անհանգստանում է Հայաստանը, գրավելով այն ամուր լեռը, որ մինչև այսօր էլ այդ ավազակի անունով կոչվում է Վայկունիք։*

## *ԺԵ*

### ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ՊՈՄՊԵՈՍ ԶՈՐԱՎԱՐԻ ՄԵԶ ՎՐԱ ԳԱԼԸ, ՄԱԺԱՔԸ ԳՐԱՎԵԼԸ ԵՎ ՄԻՀՐԴԱՏԻ ՄԱՀԸ


**Բրոնզե արձանիկ Արտաշատից (Ք. ա. I դար)**

*Այն ժամանակ Հռոմեացիների Պոմպեոս զորավարը մեծ զորքով գալիս հասնում է Միջերկրյա կողմերը և իր Սկավրոս սպարապետին ուղարկում է Ասորիք՝ Տիգրանի հետ պատերազմելու: Նա գալիս է, բայց չի հանդիպում Տիգրանին, որովհետև սա վերադարձել էր իր երկիրը ավազակի հարուցած խուճապի պատճառով: Սկավրոսն անցնում է Դամասկոս և, տեսնելով, որ Մետեղը և Ղուղը քաղաքն առել են, նրանց հալածում է այնտեղից, ինքը շտապում է հասնել Հրեաստան Արիստաբուղի[10] վրա, իբրև օգնական նրա ավագ եղբոր Հյուրկանոս քահանայապետին[11], որ Աղեքսանդրի որդին էր:*

*Իսկ Պոմպեոսը Միհրդատի դեմ պատերազմելով՝ հանդիպում է սաստիկ դիմադրության և ահավոր կռիվների. նա մեծ վտանգի է են- թարկվում. սակայն բազմությունը հաղթում է, և Միհրդատը փա- խուստ է տալիս Պոնտոսի կողմերը: Նրանից Պոմպեոսն ազատվելով՝ որն ինքը չէր սպասում, գրավում է Մաժաքը, բռնում է նրա որդուն՝ Միհրդատին, քաղաքում զորք է թողնում և առանց նրան հետամուտ լինելու՝ շտապում է Ասորիքով անցնել Հրեաստան: Նա Պոնտացի Փիղատոսի հոր ձեռքով Միհրդատին սպանում է թունավոր դեղով: Այս բանին վկայում է և Հովսեպոսը[12] բալասանին վերաբերող գլխում, ասելով. «Երիքովի մոտ Պոմպեոսին հասնում է Միհրդատի մահվան ավետավոր լուրը»:*

## *ԺԶ*

ՏԻԳՐԱՆԻ ՀԱՐՁԱԿՎԵԼԸ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ԶՈՐՔԵՐԻ ՎՐԱ.
ԳԱԲԻԱՆՈՍԻ ԽՈՒՅՍ ՏԱԼԸ ԵՎ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄԻՀՐԴԱՏԻՆ ԱԶԱՏԵԼԸ

*Իսկ Հայոց Թագավոր Տիգրանը գերի հրեաներին տեղավորելով Արմավիրում և Վարդգեսի ավանում[13], որ գտնվում է Քասախ գետի վրա, ավազակներին լեռներից բնաջինջ անելով և Միհրդատի սուգը կատարելով՝ այնուհետև շարժվում գնում է Ասորիք, հռոմեացիների զորքերի դեմ վրեժ առնելու: Նրա դեմ է գալիս Գաբիանոսը՝ հռոմեացիների զորքի սպարապետը[14], որին այնտեղ թողել էր Պոմպեոսը Հռոմ վերադառնալիս: Գաբիանոսը չի համարձակվում Տիգրանի հետ ընդհարվել և Եփրատի մոտից դառնում գնում է Եգիպտոս, պատճառ բերելով Պտղոմեոսին: Եվ Տիգրանի հետ գաղտնի հաշտություն կնքելով ետ է տալիս Միհրդատի որդուն՝ պատանի Միհրդատին, որ Տիգրանի քեռորդին էր և որին բռնել էր Պոմպեոսը Մաժաքում, ասելով, թե գաղտնի փախավ:*

## *ԺԷ*

### ԿՐԱՍՍՈՍԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՎ ՏԻԳՐԱՆԻՑ ՆՐԱ ՍՊԱՆՎԵԼԸ

*Հռոմեացիները կասկածելով՝ Գաբիանոսին փոխում են և նրա տեղ ուղարկում են Կրասսոսին: Նա գալով գրավում է ամբողջ գանձերը, որոնք գտնվում էին Երուսաղեմում աստծո տաճարում, և հետո դիմում է Տիգրանի վրա: Եփրատն անցնելով սպանվում է բոլոր զորքերի հետ Տիգրանի դեմ պատերազմելիս: Տիգրանը նրա գանձերը հավաքելով վերադառնում է Հայաստան[15]:*

## *ԺԸ*

### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԿԱՍՍԻՈՍԸ ԴԻՄԱԴՐԵՑ ՏԻԳՐԱՆԻՆ, ԵՎ ՄԻՀՐԴԱՏԻ ԱՊՍՏԱՄԲՎԵԼՆ ՈՒ ԿԵՍԱՐԻԱՆ ՇԻՆԵԼԸ

*Հռոմեացիք զայրանալով ուղարկում են Կասսիոսին[16] անթիվ զորքերով: Սա գալով՝ դիմադրում է Հայոց զորքերին և թույլ չի տալիս Եփրատն անցնել և ասպատակել Ասորիքը:*

*Այս ժամանակները Տիգրանի մեջ կասկած է ծագում պատանի Միհրդատի մասին, թե իր քեռորդին չէ, ուստի նրան ոչ մի իշխանություն չի տալիս, ոչ իսկ նրա երկիրը՝ Վրաստանը: Միհրդատը արհամարհանք կրելով իր քեռի Տիգրանից՝ ապստամբում է ու ապավինում*

*Կեսարին[17], և նրանից Պերգե քաղաքի իշխանությունն ստանալով՝ նրա հրամանով օգնում և աջակցում է Հերովդեսի հորը, Անդիպատ-րոսին: Սա Մաժաք քաղաքը շենացնում է ավելի ընդարձակ և պայ-ծառ շինություններպով և ի պատիվ Կեսարի այն կոչում է Կեսարիա: Այս ժամանակից սկսած այդ քաղաքի վրայից վերանում է Հայոց իշ-խանությունը:*

*ԺԹ*

## ՏԻԳՐԱՆԻ ԵՎ ԱՐՏԱՇԵՍԻ ՄԻԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ, ՊԱՂԵՍՏԻՆ ԱՍՊԱՏԱԿՈՂ ԶՈՐՔ ՈՒՂԱՐԿԵԼԸ. ՀՅՈՒՐԿԱՆՈՍ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻ ԵՎ ԲԱԶՄԱԹԻՎ ՀՐԵԱՆԵՐԻ ԳԵՐՈՒԹՅՈՒՆԸ

*... Ապա Տիգրանը Ռշտունյաց նախարարության նահապետ Բարզափրանին[18] սպարապետ նշանակելով հայոց և պարսից զորքերին՝ ուղարկում է հռոմեացիների զորքերի դեմ և հրաման է տալիս՝ Ասորիքի ու Պաղեստինի բնակիչներին հաշտության բերել և խաղաղեցնել: Բարզափրանին ընդառաջ է գալիս մեկը Պակարոս[19] անունով, որի հայրը եղել էր ասորիների թագավոր, իսկ ինքը խնամի էր Անտիգոնոսին Արիստաբուղյան տոհմից: Գալով Ռշտունյաց նահապետ և հայոց ու պարսից սպարապետ Բարզափրանի մոտ, խոստանում է հինգ հարյուր գեղեցիկ կին և հազար քանքար[20] ոսկի, եթե իրեն օգնի հրեաների Հյուրկանոսին թագավորությունից զրկելու և Անտիգոնոսին թագավորեցնելու:*

*Երբ հրեաների քահանայապետ ու թագավոր Հյուրկանոսը և Հերովդեսի եղբայր Փասայելը տեսան, որ Բարզափրանը հռոմեացիների զորքերին փախցրեց՝ ոմանց դեպի ծովը, ոմանց զանազան քաղաքներ, և ինքը խաղաղությամբ անցնում է երկրով, իրենք էլ նրա հետ բանակցում են խաղաղության համար: Նա էլ Գնել անունով մեկին Գնունյաց ցեղից, որ Հայոց թագավորի տակառապետն էր, հեծելազորքով ուղարկում է Երուսաղեմ՝ խաղաղություն կնքելու պատրվակով, բայց գաղտնապես՝ Անտիգոնոսին օգնելու նպատակով: Հյուրկանոսը տակառապետին ներս չի ընդունում Երուսաղեմ բոլոր զորքերով, այլ միմիայն հինգ հարյուր հեծյալներով: Եվ տակառապետը դավաճանորեն խորհուրդ է տալիս Հյուրկանոսին գնալ Բարզափրանի մոտ երկրի ավերմունքի մասին (խոսելու) և խոստանում է իր կողմից ևս բարեխոս լինել: Հյուրկանոսը Բարզափրանից երդում է խնդրում, նա էլ երդվում է արեգակով, լուսնով և իրենց բոլոր երկնային պաշտելիքներով, նաև Արտաշեսի և Տիգրանի արևով: Այս բանին վստահանալով՝ Հյուրկանոսը թողնում է Հերովդեսին Երուսաղեմի վրա և իր հետ վերցնելով Հերովդեսի ավագ եղբորը՝ Փասայելոսին, գալիս է Բարզափրանի մոտ՝ ծովի ափը, Եքտիպոն կոչված գյուղը:*

*Բարզափրանը խորամանկությամբ նրանց պատվում է, բայց հանկարծ այդ տեղից մեկնելով մնացած զորքին հրաման է տալիս նրանց բռնել և Անտիգոնոսի ձեռքը մատնել: Եվ Անտիգոնոսը Հյուրկանոսի վրա ընկնելով՝ ատամներով կտրում է նրա ականջները, որպեսզի*

եթե հանգամանքները փոխվեն, նա այլևս անկարող լինի քահանայապետություն անել, որովհետև (հրեական) օրենքը պահանջում է, որ քահանա լինեն միայն ողջանդամները:

Իսկ Բարզափրանը հրաման տվեց Հայոց թագավորի տակառապետ Գնելին, որ Երուսաղեմում Հերովդեսին որսա: Գնելը ջանաց խաբեությամբ Հերովդեսին պարսպից դուրս բերել, բայց Հերովդեսը հանձն չառավ, միևնույն ժամանակ չվստահացավ քաղաքում ևս մնալ Անտիգոնյանների զատվելու պատճառով, այլ գիշերը ծածուկ ընտանիքով փախավ եդոմայեցիների մոտ, և ընտանիքը Մասադան ամրոցում թողնելով, ինքն շտապեց Հռոմ հասնել: Բայց Հայոց զորքը Անտիգոնյանների օժանդակությամբ Երուսաղեմ մտնելով՝ ոչ ոքի չվնասեցին, այլ միայն Հյուրկանոսի գույքերն առան, ավելի քան երեք հարյուր քանքար: Եվ գավառն ասպատակելով՝ Հյուրկանյաններին (հավատարիմ տեղերն) առան ավերեցին. մարիսացիների քաղաքն էլ առնելով, այնտեղ թագավոր դրին Անտիգոնոսին: Իսկ Հյուրկանոսին կապելով՝ գերիների հետ միասին բերին Տիգրանին, և Տիգրանը Բարզափրանին հրամայեց՝ մարիսացիների քաղաքից բերված հրեա գերիներին բնակեցնել Շամիրամի քաղաքում[21]: Սրանից հետո Տիգրանն ապրելով ոչ ավելի քան երեք տարի, վախճանվում է, երեսուներեք տարի թագավորելուց հետո:

## Ի

### ՀԱՅՈՑ ՄԻ ԱՅԼ ՊԱՏԵՐԱԶՄ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ՀԵՏ. ՍԻՂՈՆԻ ԵՎ ԲԵՆԴԻԴԻՈՍԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

Հերովդեսը Հռոմ անցնելով՝ Անտոնիոսի, Կեսարի և սինկլիտոսի[22] առաջ պատմում է իր հավատարմությունը հռոմեացիներին, և Անտոնիոսից Հրեաստանի թագավոր նշանակվելով՝ իրեն օգնական է վերցնում Բենդիդիոս սպարապետին հռոմեական զորքերով, որպեսզի Հայոց հետ պատերազմի և Անտիգոնոսին տապալի: Ասորիք հասնելով՝ նա փախուստի է մատնում Հայոց զորքերը և Սիղոնին թողնելով, որ հայերին դիմադրի Եփրատի մոտ և Պակարոսին սպանելով, ինքը դառնում է Երուսաղեմ՝ Անտիգոնոսի դեմ: Բայց հայերը նորից օգնություն ստանալով պարսիկներից՝ դիմում են Սիղոնի վրա և հալածում են նրան, չպրտում Բենդիդիոսի մոտ, անչափ արյունահեղություններ անելով[23]:

## ԻԱ

### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԱՆՏՈՆԻՈՍԸ ԱՆՁԱՄԲ ՀԱՅՈՑ ԶՈՐՔԵՐԻ ՎՐԱ ԴԻՄԵԼՈՎ ԳՐԱՎՈՒՄ Է ՇԱՄՇԱՏ ՔԱՂԱՔԸ

*Անտոնիոսը զայրանալով ինքը անձամբ գալիս է հռոմեական բոլոր զորքերով: Շամշատ[24] հասնելիս լսում է Տիգրանի մահը, քաղաքն առնելով, Սոսիոսին օգնական թողնելով Հերովդեսին՝ Երուսաղեմում Անտիգոնոսի դեմ կռվելու, ինքը ձմեռանոց է գնում Եգիպտոս: Նա շտապում էր այնտեղ հասնել կնամոլ մարդու փափաշոտությամբ, փռված ցանկությամբ դեպի Կլեոպատրան՝ եգիպտացիների թագուհին: Այս Կլեոպատրան Պտղոմեոս Դիոնիսի դուստր էր, Պտղոմյան Կլեոպատրայի թոռը և շատ սիրելի էր Հերովդեսին. այս պատճառով էլ Անտոնիոսն առավելապես հանձնարարում էր Հերովդեսը Սոսիոսին: Սա քաջապես կռվելով առնում է Երուսաղեմը, սպանում է Անտիգոնոսին և թագավորեցնում է Հերովդեսին ամբողջ Հրեաստանի և Գալիլիայի վրա[25]:*

## ԻԲ

### ԱՐՏԱՎԱԶԴԻ ԹԱԳԱՎՈՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ ԵՎ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԵԼԸ

*Հայաստանում թագավորում է Տիգրանի որդի Արտավազդը: Սա իր եղբայրներին և քույրերին բնակեցնում է Աղիովիտ և Առբերանի գավառներում[26], նրանց ժառանգություն թողնելով այդ գավառներում գտնված արքունական գյուղերը, առանձին եկամուտով և ռոճիկներով, նման նրանց այն ազգականներին, որ գտնվում էին Հաշտյանքի[27] կողմում, (սահմանելով) որ նրանք ավելի պատվավոր և ավելի թագավորազն ճանաչվեն, քան այն մյուս Արշակունիները. միայն սահմանում է, որ նրանք չապրեն Այրարատում, թագավորի բնակության տեղում: Բայց ուրիշ ոչ մի արիություն ու քաջագործություն ցույց չտվեց, այլ անձնատուր լինելով կերուխումի, թափառում էր ճախճախուտ տեղերում, եղեգնուտներում, քարափներում, վայրի էշեր և խոզեր հետապնդելով. անփույթ լինելով ուսման, քաջության և բարի հիշատակների, միայն իր փորի ծառան և ստրուկը դառնալով՝ աղբանոցներն էր մեծացնում[28]: Իր զորքերից պախարակվելով իր անգործ ծուլության և սաստիկ որկրամոլության պատճառով, մանավանդ որ Անտոնիոսը Միջագետքն առել էր նրանից, զայրացած հրամայում է զորքեր հանել՝ Ատրպատականի նահանգի բյուրավորներին,*

*Կովկաս լեռան բնակիչներին աղվանների և վրացիների հետ, շարժվում գնում է Միջագետք և հալածում է հռոմեացիների զորքերը։*

## *ԻԳ*

### ԱՆՏՈՆԻՈՍԻ ՁԵՐԲԱԿԱԼԵԼԸ ԱՐՏԱՎԱԶԴԻՆ

*Առյուծի նման գազանաբար մռնչաց Անտոնիոսը, մանավանդ գրգռվելով Կլեոպատրայից, որ քեն էր պահում իր տատի կրած չարչարանքների համար Տիգրանից։ Ոչ միայն հայերին էր լինում մահաբեր, այլև ուրիշ շատ թագավորների, որպեսզի նրանց իշխանություններին տիրի։ Ուստի և Անտոնիոսը շատ թագավորներ սպանելով, նրանց իշխանությունները վստահում էր Կլեոպատրային, բացի Տյուրոսից և Սիդոնից և առհասարակ բացի նրանցից, որոնք Ազատ գետի մոտերքն էին։ Վերցնելով զորքերի բազմությունը՝ դիմում է Արտավազդի վրա։ Միջագետքով անցնելով՝ սաստկապես կոտորում է հայոց զորքերը, ձերբակալում է նրանց թագավորին և Եգիպտոս վերադառնալով՝ Կլեոպատրային է պարգևում Տիգրանի որդի Արտավազդին, նաև ուրիշ շատ իրեր պատերազմի ավարից։*

*1. Խորենացու արքայացանկի համաձայն, Տիգրան II-ը որդին է Արտաշեսի, մինչդեռ ըստ Ապպիանոսի, Տիգրան II-ի հոր անունը ևս Տիգրան է եղել (Տիգրան I)։*

*2. Գերադասելի են Խորենացու «Հայոց պատմության» ձեռագրերի այն տարընթերցվածները, որտեղ խոսքը Արշականի հաջորդ Արշանակի և նրա 19-րդ տարվա մասին է։ Հաշիվը, սակայն, չի փոխվում՝ Արշականի իշխած 30 տարիներին գումարվում է 19 տարի և ստացվում 49։*

*3. Խորենացին այստեղ նկատի ունի Սելևկյաններին։*

*4.* ***Միհրդատ*** *– Խորենացին նկատի ունի Միհրդատ Եվպատորին, սակայն, սխալմամբ կարծում է, թե Միհրդատը Տիգրանի քրոջ ամուսինն էր, մինչդեռ, ինչպես հայտնի է, Տիգրանը Միհրդատի դստեր՝ Կլեոպատրայի ամուսինն էր։*

*5.* ***Մաժաք*** *(Կեսարիա Կապադովկիո) – Կապադովկիայի մայրաքաղաքն է, այժմ՝ Ղայսերի։*

*6.* ***Միջերկրյա*** *– հայ մատենագրության մեջ այսպես էին կոչվում Փոքր Ասիայի երկրները։*

*7.* ***Պտղոմյան Կլեոպատրա*** *– խոսքը Սելևկյան թագուհի, Եգիպտոսի Պտղոմեոս VIII թագավորի դստեր՝ Կլեոպատրա-Սելենեի մասին է։*

*8. Խորենացին նկատի ունի Հրեաստանի Ալեքսանդրա-Սալոմեա թագուհուն (76-67)։*

*9. Հ. Մանանդյանը ենթադրում է, որ այս «Վայկուն անունով ավազակը», որը վրդովվել էր հայոց խաղաղությունը և դրանով իսկ ստիպել էր Տիգրան Երկ-*

*րորդին վերադառնալ Պտղոմայիս (Պտղոմայիդ) քաղաքից Հայաստան, նույն հռոմեական զորավար Լուկուլլոսն էր:*

*10.* ***Արիստաբուղ*** *– Հրեաստանի թագավոր Արիստոբուլոսն է (67-63), որին գահընկեց արեցին հռոմեացիները:*

*11.* ***Հյուրկանոս*** *– Հրեաստանի քահանայապետ ու թագավոր Հյուրկանոս II-ն է (63-40), Արիստոբուլոս II-ի ավագ եղբայրը:*

*12. Այս իրադարձությունների նկարագրության համար Խորենացին որպես աղբյուր օգտագործել է հրեա նշանավոր մատենագիր Հովսեպոս Փլավիոսի աշխատությունները: Շատ դեպքերում, աննշան կամ ոչ էական ճշգրտումներով ու փոփոխություններով, Խորենացին կրկնում է Հովսեպոսին (տե՛ս* ***Հովսեպոս Փլավիոս,*** *Հրեական պատերազմի մասին, գիրք I, էջ 35 և այլն):*



***Գայոս Օկտավիանոս Օգոստոս***

*13.* ***Վարդգեսավան*** *– քաղաք Արարատյան դաշտավայրում, ապագա Վաղարշապատ քաղաքի տեղում:*

*14. Խոսքը հռոմեական զորավար, պետական գործիչ, 67 թ. ժողովրդական տրիբուն, 58 թ. կոնսուլ Գաբինիոսի մասին է, որին Պոմպեոսը թողել էր Արևելքում որպես իր տեղապահ:*

*15. Այստեղ ակնհայտ շփոթմունք է, քանզի Կրասսոսի գործունեությունն Արևելքում աղերսվում է ոչ թե Տիգրան II -ի, այլ վերջինիս որդու՝ Արտավազդ II-ի հետ: Բացի այդ, Կրասսոսը պարտություն է կրել ու սպանվել ճակատամարտում ոչ թե հայերից, այլ պարթևներից:*

*16.* ***Կասսիոս*** *– խոսքը վերաբերում է Կրասսոսի բանակի քվեստոր Գայոս Կասսիոս Լոնգինոսին որը, Կրասսոսի պարտությունից հետո, դարձավ Արևելքում հռոմեական զորքերի հրամանատար:*

*17. Նկատի ունի հռոմեական ականավոր պետական ու ռազմական գործիչ Գայոս Հուլիոս Կեսարին (100-44):*

*18.* ***Բարզափրան*** *– Հովսեպոսի մոտ հիշատակված է Բարզափրանես ձևով, և այն էլ ոչ թե որպես Հայոց սպարապետ ու Ռշտունյաց տոհմի նահապետ, այլ*

*պարթևների զորավար և սատրապ: Խորենացու սույն հաղորդումից կարելի է եզրակացնել, որ մ. թ. ա. 40 թ. դեպի Ասորիք պարթևների կազմակերպած այս արշավանքին մասնակցել են նաև հայկական զորամասերը:*

*19. Այստեղ ևս շփոթմունք է. Պակարոսը (Բակուր) ոչ թե Ասորիքի թագաժառանգն էր, այլ Պարթևստանի:*

*20. Այսինքն՝ հազար տաղանդ:*

*21. Նկատի ունի Վան քաղաքը: Խորենացու սույն վկայությունները Տիգրան Միջինի գործունեության մասին, կարիք ունեն ճշգրտման: Հայ-պարթևական զորքերի ասորա-պաղեստինյան այս արշավանքը, հրեաների գերեվարությունը Հայաստան և այլն, ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, կատարվել են Արտավազդ II-ի օրոք: Խորենացու մոտ Արտավազդ II-ը փոխարինվել է Տիգրան II-ով, որը բացատրվում է Տիգրանի փառքով և կատարած գերեվարություններով:*

*22.* ***Սինկլիտոս*** *– հունարեն բառ է, որը նշանակում է համաժողով: Այստեղ Խորենացին նկատի ունի հռոմեական ծերակույտը (սենատ):*

*23. Այս իրադարձությունները տեղի են ունեցել Ք. ա. 39 թվականին:*

*24.* ***Շամշատ*** *– Կոմմագենեի թագավորության մայրաքաղաքն էր:*

*25. Հրեաստանի թագավոր Անտիգոնոսը սպանվեց Ք. ա. 37 թվականին, նույն թվականին էլ, հռոմեացիների օգնությամբ, Հրեաստանի թագավոր ու քահանայապետ հռչակվեց Հերովդես I Մեծը (37-4):*

*26. Աղիովիտը գավառ է Տուրուբերանում՝ Վանա լճի հյուսիսային եզերքում, իսկ Առբերանին՝ Վասպուրականում, Վանա լճի հյուսիսարևելյան մասում:*

*27. Հաշտյանքը Չորրորդ Հայքի գավառներից մեկն էր:*

*28. Արտավազդ II-ի սույն նկարագիրը, որը տալիս է Խորենացին, չի համապատասխանում պատմական իրականությանը: Հունա-հռոմեական աղբյուրներից մենք գիտենք, որ Արտավազդը եղել է իր ժամանակի ամենաուսյալ և գիտուն անձնավորություններից մեկը, նա հմուտ դիվանագետ էր ու խոշոր ռազմական գործիչ:*

## ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ ԸՍՏ ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍԻ

### *ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

### *Գիրք հիսունչորսերորդ*

*9,1 Օգոստոսը[1] հպատակ երկրները կառավարում էր հռոմեական սովորույթի համաձայն, մինչդեռ դաշնակից (երկրներին) թույլ*

*էր տալիս կառավարվել իրենց հայրենի ավանդություններին
համաձայն: Եվ նա նպատակահարմար չէր գտնում ոչ այս
մեկին որևէ բան ավելացնել, ոչ իսկ թույլ տալ որևէ նոր բանի
տիրանալու, այլ ճշտորեն բավարարվել եղածով:*
4 *Իսկ քանի որ մյուս հայերը[2] մեղադրում էին Արտաշեսին[3] և
(դեսպանություն ուղարկելով) խնդրում էին Հռոմում գտնվող
նրա Տիգրան եղբորը[4], ապա Օգոստոսն ուղարկեց Տի-
բերիոսին[5], որպեսզի (Արտաշեսին) հեռացնի թագավո-*
5 *րությունից և (Տիգրանին) հաստատի գահի վրա: Սակայն
(Տիբերիոսն) այս պատրաստություններին համապատասխան
ոչինչ չկատարեց, քանզի հայերն իրենք արդեն սպանել էին
Արտաշեսին[6]: Իսկ Տիբերիոսը խիստ մեծարվեց, մանավանդ որ
այս բոլորի առթիվ որոշվեց զոհաբերություններ կատարել,
կարծես թե քաջարիություն էր ցուցաբերել:*

## Գիրք հիսունհինգերորդ

10a,4 *Այսուհանդերձ պարթևների դեմ պատերազմ չսկսվեց. քանզի
Փրատակեսը[7] լսելով, որ Գայոսը[8] Սիրիայում է գտնվում իբրև
կոնսուլ, միաժամանակ կասկածելով, որ իր երկրում ևս
իրավիճակը առաջվա պես դարձյալ անբարենպաստ է, չտա-
պեց համաձայնության գալ (հռոմեացիների հետ) այն պայ-
մանով, որ ինքը կհեռանա Հայաստանից և իր եղբայրները*
5 *կմնան ծովից այն կողմ[9]: Սակայն հայերը, քանի որ Տիգրանը[10]
բարբարոսների[11] դեմ մղած ինչ-որ պատերազմի ժամանակ
սպանվել էր, իսկ Էրատոն[12] էլ հրաժարվել էր իշխանությու-
նից, պատերազմի ելան հռոմեացիների դեմ, որովհետև նրանց
(վրա իշխանությունը) հանձնել էին ոմն մեղացի Արիո-
բարզանեսի[13], որը մի ժամանակ Տիրիդատեսի[14] հետ եկել էր
հռոմեացիների մոտ. այս դեպքերը կատարվեցին հաջորդ*
6 *տարին[15], երբ կոնսուլներ էին Պուբլիոս Վինիկիոսը և Պուբ-
լիոս Վարոսը: Ու թեպետ հայերը նշանակալից որևէ գործ
չկատարեցին, բայց ոմն Ադդոն, որը տիրում էր Արտագերսին[16],
համոզեց Գայոսին ընդհուպ մոտենալ պարիսպներին և խոցեց*
7 *նրան[17]. այս պատճառով էլ (Արտագերսը) պաշարման
ենթարկվեց ու երկար դիմադրեց: Բայց երբ վերջապես այն
վերցվեց, ոչ միայն Օգոստոսը, այլև Գայոսը նույնպես ստացել
էր իմպերատորի տիտղոս և Հայաստանն այնժամ Օգոստոսի և
սենատի կողմից ստացավ Արիոբարզանեսը և ոչ շատ*

*ժամանակ անց նրա մահից հետո՝ նրա որդի Արտավազդը*[18]*։ Այսպես Գայոսը վերքի պատճառով թուլացավ և քանի որ ոչ մի կերպ չէր առողջանում, սկսեց բանականությունը կորցնել և առավել ևս բթամտացավ։*

*1. Խոսքը վերաբերում է Հռոմի առաջին կայսր Գայոս Օկտավիանոս Օգոստոսին (Ք. ա. 27 թ.-Ք. հ. 14 թ.)։*

*2. **«Մյուս հայերը»** - սրանք Հայաստանում հռոմեասեր հոսանքի ներկայացուցիչ հայ մեծամեծներն էին։*

*3. **Արտաշես** - Արտավազդ II -ի ավագ որդին է, Հայաստանի թագավոր Արտաշես II-ը (30-20), որն իր հոր նենգադավ ձերբակալությունից հետո գլխավորեց հայ ժողովրդի ազատագրական պայքարն ընդդեմ հռոմեացիների։ Սա Արտավազդ II-ի եղերական սպանության վրեժը լուծում է սրի քաշելով Հայաստանում մնացած բոլոր հռոմեացիներին։*

*4. Տիգրանը Արտաշես II-ի կրտսեր եղբայրն է. Անտոնիոսը նրան գերեվարել էր Եգիպտոս, որտեղից Օկտավիանոսը փոխադրեց Հռոմ, ուր տասը տարի մնալուց հետո ուղարկվեց Հայաստան՝ Արտաշես II-ի թափուր գահը զբաղեցնելու։ Հայաստանի թագավոր Տիգրան III-ն է (20-8)։*

*5. Տիբերիոսը Օգոստոս կայսեր որդեգիրն էր, նրա ամենամերձավոր խորհրդականը Արևելքի հարցերում։ Սա է, որ գահ բարձրացրեց Հռոմի դրածո Տիգրան III-ին։ Հետագայում՝ Հռոմի կայսր (14-37)։*

*6. Ուսումնասիրողներից շատերը ենթադրում են, որ Արտաշես II-ը սպանվել է անձամբ Օգոստոս կայսեր դրդմամբ։*

*7. **Փրատակես** - պարթևական Հրահատ V (Հրահատակ) թագավորն է (Ք. ա. 2 - Ք. հ. 4 թթ.)։*

*8. **Գայոս Կեսար** - հռոմեական զորավար, Օգոստոս կայսեր թոռն ու որդեգիրը։ Ք. հ. 1 թ. Օգոստոսի կողմից ուղարկվեց Արևելք։ Հռոմեական զենքի ուժով ճնշեց Ք. ա. 2 թ. հայ ժողովրդի բարձրացրած ապստամբությունը։*

*9. «Ծովից այն կողմ» ասելով՝ Հրահատ V-ը նկատի ուներ Հռոմը։*

*10. Սա Հայաստանի թագավոր Տիգրան III-ի որդին էր՝ «արքայից արքա» Տիգրան IV-ը (8-5, Ք. ա. 2- Ք. հ. 1 թթ.)։*

*11. Խոսքը կովկասյան լեռնաբնակների մասին է, որոնք Ք. հ. 1 թ. ասպատակում էին Հայաստանի հյուսիսարևելյան մատույցները։*

*12. **Էրատո** - Մեծ Հայքի թագուհի (8-5, 2-1, 6-11), Հայոց թագավոր Տիգրան III-ի դուստրը և Տիգրան IV-ի քույրը, վերջինիս գահակիցը, Արտաշեսյան հարստության վերջին ներկայացուցիչը։*

*13. **Արիոբարզանես** - սա Ատրպատականի թագավոր Արտավազդի որդին էր, որին Ք. հ. 2 թ. Գայոս Կեսարը հռչակեց Մեծ Հայքի թագավոր (2-4)՝ նպատակ ունենալով Մեծ Հայքի թագավորությունը ձուլել Ատրպատականի թագա-*

*վորության հետ:*

*14. **Տիրիդատես** – Տրդատ անվան հունականացված ձևն է:*

*15. Այսինքն՝ Ք. հ. 2 թվականին:*

*16. Սա հռչակավոր Արտագերս ամրոցն է, որը գտնվում էր պատմական Հայաստանի Արշարունյաց գավառում:*

*17. Ադդոնը (ըստ Երևույթին՝ Ատոմ) Գայոս Կեսարին դաշույնով ծանր վիրավորեց 2 թ. սեպտեմբերի 9-ին:*

*18. Մեծ Հայքի և Ատրպատականի թագավոր Արիոբարզանի որդին է, որը հոր մահից հետո, Օգոստոս կայսրի կողմից հռչակվեց Մեծ Հայքի ու Ատրպատականի թագավոր: Հայոց Արտավազդ IV թագավորն է (4-6): Հայերը չճանաչեցին սրա իշխանությունը և, ապստամբելով, սպանեցին (6 թ.):*

## «ԱՆԿՅՈՒՐԱՅԻ ԿՈԹՈՂԸ» ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅԱՆ ՎԵՐՋԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Ք. ա. I դարի վերջերի Հայաստանի քաղաքական պատմության, ինչպես նաև հայ-հռոմեական հարաբերությունների մասին կարևոր աղբյուր է «Աստվածային Օգոստոսի գործերը» վերտառությամբ հայտնի արձանագրությունը: Սա, փաստորեն, Օգոստոս կայսեր կտակ-հաշվետվությունն է իր կատարած գործերի վերաբերյալ: Հաշվետվության 35 գլուխներից յուրաքանչյուրում թվարկված են Օգոստոսի ծառայությունները Հռոմի հանդեպ, վեր են հանված նրա ներքին ու արտաքին քաղաքականության բոլոր էական կողմերը: Հաշվետվությունը, որը կազմել է ինքը՝ Օգոստոսը, կայսեր կտակի համաձայն զետեղվել է Հռոմում գտնվող նրա դամբարանի մուտքի մոտ: Չնայած այդ արձանագրությունն առ այսօր հայտնաբերված չէ, սակայն գիտությանը հայտնի են նույն կտակի երեք պատճենները, որոնցից առավել ամբողջական է դեռևս 1555 թ. Անկարայում հայտնաբերված արձանագրությունը:***

***Հունարեն և լատիներեն լեզուներով գրված այդ արձանագրությունը փորագրված է եղել Օգոստոս կայսեր անունը կրող և ի պատիվ նրա՝ Անկյուրա (Անկարա) քաղաքում կառուցված տաճարի պատերից մեկի վրա: Դա է պատճառը, որ այս արձանագրությունը հայտնի է «Անկյուրայի կոթող» անունով: Սույն արձանագրության ուսումնասիրության և հրատարակման գործում (1865 և 1883 թթ.) նշանակալից ավանդ ունի գերմանացի պատմաբան Թ. Մոմզենը: «Անկյուրայի կոթողից» ստորև բերված հատվածը տալիս ենք ըստ***

***Հ. Հ. Մանանդյանի թարգմանության, որը կատարված է Մոմզենի աշխատասիրած վերջին հրատարակությունից*** [***տե՛ս*** «Res gectae divi Augusti» (Monumentum Ancyranum), ed. **Th. Mommsen,** Berlin, 1883]։

*ԱՍՏՎԱԾԱՅԻՆ ՕԳՈՍՏՈՍԻ ԳՈՐԾԵՐԸ, V*

*25–32. Մեծ Հայաստանը թեև ես կարող էի նրա Արտաշես թագավորի[1] սպանությունից հետո դարձնել նահանգ, սակայն ավելի լավ համարեցի, հետևելով մեր նախնիների օրինակին՝ այդ թագավորությունը տալ Տիգրանին[2], որն Արտավազդի որդին էր և Տիգրան թագավորի թոռը, հանձնարարելով այդ Տիբերիոս Ներոնին[3], որն այն ժամանակ իմ որդեգիրն էր։*

*Այնուհետև, երբ այդ ժողովուրդն ընդվզեց և ապստամբեց՝ նրան նվաճեցի իմ որդու՝ Գայոսի[4] ձեռքով և թագավորական գահը տվեցի Արիոբարզանին՝[5] մեդացիների Արտավազդ թագավորի որդուն, որպեսզի նա երկիրը կառավարի, իսկ սրա մահից հետո, նրա որդուն՝ Արտավազդին[6]։ Երբ սա սպանվեց՝ ուղարկեցի այդ թագավորությունը Տիգրանին, որը Հայոց արքունի տոհմից էր[7]։*

*1. Խոսքը Արտավազդ II թագավորի ավագ որդու՝ Հայոց թագավոր Արտաշես II-ի մասին է։*

*2. Սա Հայոց թագավոր Տիգրան III-ն էր։ Արտաշես II-ի կրտսեր եղբայրը (տե՛ս 401-րդ էջ, ծան. № 4)։*

*3. Օգոստոսը նկատի ունի իր խորթ որդուն՝ Տիբերիոս Կլավդիոս Ներոնին, որի մայրը՝ Լիվիա Դրուզիլլան Ք. ա. 30 թվականին ամուսնացել էր Օգոստոսի հետ։ Ք. հ. 4 թ. Օգոստոսը սրան հռչակեց ժառանգորդ և վերանվանակոչեց՝ Տիբերիոս Հուլիոս Կեսար։ Տիբերիոսը Օգոստոսի մահից հետո հռչակվեց կայսր։*

*4. **Գայոս Կեսար** – սա Օգոստոսի թոռն էր՝ նրա դստեր Յուլիայի և հայտնի զորավար Մարկոս Վիպսանիոս Ագրիպպայի որդին։ Ծնվելուց անմիջապես հետո (Ք. ա. 20 թ.) Օգոստոսը սրան որդեգրեց և հռչակեց ժառանգորդ։ Սակայն Գայոս Կեսարի վաղաժամ մահից հետո (տե՛ս 402-րդ էջ, ծան. №17), Օգոստոսը որդեգրեց Տիբերիոսին։*

*5. **Արիոբարզան** – Մեծ Հայքի թագավոր (2–4), հռոմեական դրածո, Անտոնիոսի բարեկամ Ատրպատականի թագավոր Արտավազդի որդին։*

*6. Սա Հայոց Արտավազդ IV թագավորն է (4–6), հռոմեական դրածո։ Հայերը չճանաչեցին Արտավազդ IV-ի իշխանությունը և ապստամբելով՝ սպանեցին նրան։*

*7. Այստեղ խոսքը Հրեաստանի Հերովդես I թագավորի թոռան՝ Տիգրանի*

*մասին է: Այս Տիգրանը իգական գծով Արտաշեսյան շառավիղ էր. նրա մայրը՝ Գլափյուրան դուստրն էր Կապադովկիայի Արքելաոս թագավորի և Արտաշեսյան արքայադստեր: Հռոմեական դրածո Տիգրան V-ը Հայաստանում իշխեց ընդամենը մեկ տարի (Ք. հ. 6 թ.), հայերը սրան ևս գահընկեց արեցին:*

## ՏԻԳՐԱՆ V-Ը ԵՎ ՏԻԳՐԱՆ VI-Ը ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐ ԸՍՏ ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍԻ

### *ՀՐԵԱԿԱՆ ՀՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ*

### ***Գիրք տասնութերորդ***

*139* ***Իսկ Ալեքսանդրը՝ Հերովդես թագավորի[1] որդին, որն իր իր հոր ձեռքով սպանվել էր, ունեցել էր երկու որդի՝ Ալեքսանդրին և Տիգրանին՝ Կապադովկիայի թագավոր Արքելաոսի[2] դստրից[3]: Եվ Տիգրանը, որը թագավորում էր Հայաստանում[4], անզավակ մեռավ այն բանից հետո, երբ ամբաստանվելով տարվեց Հռոմ: Իսկ Ալեքսանդրը ունեցավ իր եղբոր անվանակից որդի՝ Տիգրանին, որը հետագայում Ներոնի[5] կողմից ուղարկվեց որպես Հայաստանի թագավոր[6]. այս Տիգրանն էլ ունեցավ Ալեքսանդր անունով որդի:***

*1. **Հերովդես** – Հրեաստանի թագավոր Հերովդես I Մեծն է:*

*2. **Արքելաոս** – Կապադովկիայի թագավոր (36–17):*

*3. Հովսեպոսը մեկ այլ տեղ («Հրեական պատերազմի մասին», գիրք I, 552) հիշատակում է Արքելաոսի դստեր անունը՝ Գլափյուրա: Ուսումնասիրողներն իրավացիորեն նշում են, որ սույն Գլափյուրայի մայրը եղել է Արտաշեսյան տոհմի հայ թագավորի դուստր:*

*4. Սա Մեծ Հայքի թագավոր Տիգրան V-ն է, որը գահ բարձրացավ Օգոստոս կայսեր թույլտվությամբ: Իգական գծով Արտաշեսյան շառավիղ էր:*

*5. Խոսքը հռոմեական կայսր Ներոնի (54–68) մասին է:*

*6. **Տիգրան** – Ներոն կայսեր դրածոն հայկական գահի վրա՝ «Մեծ թագավոր Հայոց Մեծաց» Տիգրան VI (60–61):*

## ՎԱՆՈՆ ԱՐՇԱԿՈՒՆԻՆ ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐ ԸՍՏ ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍԻ

### *ՀՐԵԱԿԱՆ ՀՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ*

### ***Գիրք տասնութերորդ***

48 (Պարթևները) հրավիրում են թագավորելու Մեդիայի (թագավոր) Արտաբանոսին[1] Արշակունի տոհմից։ Իսկ Արտաբանոսը համաձայնություն է տալիս ու գալիս է իր զորքի հետ։ Վոնոնեսը[2] դուրս է գալիս նրան դիմագրավելու։ Եվ սկզբում, քանի դեռ պարթևների մեծամասնությունը իրեն համամիտ էր, կռիվ մղելով, նա հաղթում է, իսկ Արտաբանոսը փախչում է դեպի Մեդիայի սահմանները։ Բայց չատ չանցած
49 (Արտաբանոսը), համախմբելով իր զորքերը, հարձակվում է Վոնոնեսի վրա և հաղթում նրան, իսկ Վոնոնեսը հեծյալ փախչում է իր փոքրաթիվ մերձավորների հետ Սելևկիա[3]։ Եվ Արտաբանոսը, որը բարբարոսներին ահաբեկելու նպատակով ճանապարհին մեծ ջարդեր գործեց, իր բազմությամբ մեկնում է
50 Կտեսիփոն[4]։ Եվ Արտաբանոսը թագավորում է պարթևների մոտ[5], մինչդեռ Վոնոնեսը ապաստան է գտնում Հայաստանում։ Սկզբում սա փորձեց տիրել երկրին[6] և դեսպանություն ուղարկեց հռոմեացիների մոտ։ Սակայն Տիբերիոսը[7] նրա
51 խնդրանքը մերժեց, նրա փոքրոգության, ինչպես նաև պարթևական (թագավորի) սպառնալիքների պատճառով, քանի որ (Արտաբանոսը) դեսպանություն ուղարկելով, սպառնացել էր պատերազմ սկսել։ Մինչդեռ Վոնոնեսը թագավոր դառնալու ոչ մի այլ հնարավորություն չուներ, քանի որ Նպատի[8] շուրջ բնակվող հայ մեծամեծները հարել էին Արտաբանոսին, որոնք և Վոնոնեսին հանձնեցին Սիրիայի
52 ստրատեգոս Սիլանոսին[9]։ Եվ (Վոնոնեսը), հանուն Հռոմում ստացած դաստիարակության, ապաստան գտավ Սիրիայում. իսկ Հայաստանը Արտաբանոսը տվեց իր որդիներից մեկին՝ Օրոդեսին[10]։

1. Հովսեպոսը չփոթում է. Արտաբանոս-Արտավանը մինչև Պարթևաց թագավոր դառնալը Մեդիայի թագավոր չէր, այլ եղել է Վրկանից աշխարհի և Կրմանի կառավարիչ։

2. **Վոնոնես** (Վոնոն) – Պարթևաց Հրահատ IV թագավորի ավագ որդին է, որն իր դաստիարակությունն ստացել էր Հռոմում։ Օգոստոս կայսեր կողմից նշանակվել էր Պարթևստանի թագավոր (7–12)։

3. Սելևկիա քաղաքը կառուցվել է Ք. ա. IV վերջին Սելևկոս Նիկատորի կողմից՝ Տիգրիսի աջ ափին, այժմյան Բաղդադից փոքր-ինչ հարավ։

4. Կտեսիփոն – պարթև Արշակունիների գահանիստ կենտրոններից մեկը,

*հետագայում՝ Սասանյան Պարսկաստանի մայրաքաղաքը: Հայկական աղբյուրներում հայտնի է առավելապես Տիզբոն անունով: Գտնվում է Տիգրիսի ափին՝ Սելևկիայի մոտ:*

*5.* ***Արտավան III*** *– Պարթևստանի արքայից արքա (12-38): Պարսկաստանում հիմնադրել է Արշակունյաց հարստության կրտսեր ճյուղը:*

*6. Փախչելով Հայաստան՝ Վոնոնը օգտվելով երկրի խառնակ ու շփոթ վիճակից, իրեն հռչակում է Մեծ Հայքի թագավոր (12-16): Սակայն և՛ Հռոմը, և՛ Պարսկաստանը չճանաչեցին նրա թագավորությունը:*

*7. Խոսքը վերաբերում է հռոմեական կայսր Տիբերիոս Կլավդիոս Ներոնին:*

*8. Բնագրում՝ Նիփատես:*

*9.* ***Սիլանոս*** *– հռոմեական Սիրիա-Ասորիք պրովինցիայի կուսակալ Կրետիկոս Սիլանոսն է: Հայաստանից վտարվելուց հետո, Վոնոնը բնակվում էր կուսակալության կենտրոն Անտիոքում՝ Սիլանոսի խիստ հսկողության ներքո:*

*10. Օրողեսն այնպես էլ Հայաստանում գահ չբարձրացավ: Հայ մեծամեծները գերադասեցին պոնտական թագավորազն Զենոնին, որը 18 թ. Տիբերիոսի եղբորորդու՝ Գերմանիկոսի ձեռքով Արտաշատում թագադրվեց Մեծ Հայքի թագավոր:*

## ՊԱՐԹԵՎԱ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ (Ք. Հ. I ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ) ԸՍՏ ԳԱՅՈՍ ԿՈՌՆԵԼԻՈՍ ՏԱԿԻՏՈՍԻ

***Գայոս Կոռնելիոս Տակիտոսը կայսերական ժամանակաշրջանի Հռոմի ամենանշանավոր պատմագիրն է: Նա ծնվել է մոտավորապես 55-57 թթ., հեծյալի ընտանիքում: Ստացել է հունական դասական կրթություն, սովորել է Հռոմում նշանավոր Քվինտիլիանոսի ճարտասանական դպրոցում: Հետագայում նա դարձել է ճանաչված հռետոր և աչքի ընկնող պետական գործիչ (81 թ.՝ քվեստոր, 88 թ.՝ պրետոր, 97 թ.՝ կոնսուլ, 112 թ.՝ Ասիա պրովինցիայի պրոկոնսուլ):***

***Քաղաքական գործունեությանը զուգընթաց Տակիտոսը զբաղվում է նաև գրականությամբ: Նրա առաջին գրական երկը նվիրված էր իր աներոջ մահվանը և կոչվում էր «Հուլիոս Ագրիկոլայի կյանքի ու բարքի մասին» (98 թ.): Տակիտոսի գրչին են պատկանում նաև «Գերման ժողովրդի ծագման և Գերմանիայի տեղադրության մասին» (98 թ.), «Տրամախոսություն հռետորների մասին» (102-103 թթ.), «Պատմություն» (ավարտել է 110 թ.) երկասիրությունները: Տակիտոսի ստեղծագործությունների գլուխգործոցը մնում է նրա***

հուշակավոր «Տարեգրությունները»: Աշխատությունը բաղկացած է եղել 16 գրքից, որոնցից պահպանվել են միայն 1-4, 12-16 գրքերը և հատվածներ 5-րդ, 6-րդ և 11-րդ գրքերից: «Տարեգրությունների» վրա հեղինակը աշխատել է մինչև իր կյանքի վերջը (մոտավորապես 125 թ.):

Լինելով սենատական արիստոկրատիայի ներկայացուցիչն ու գաղափարախոսը՝ Տակիտոսն իր երկերը շարադրել է Հռոմի զավթողական քաղաքականության ջատագովի տեսանկյունից: Չնայած այս հանգամանքին, անգնահատելի նշանակություն ունեն Տակիտոսի համապատասխան վկայությունները Հայաստանի և հայերի մասին: Դրանք մեր ժողովրդի այդ ժամանակաշրջանի պատմության կարևորագույն աղբյուրներն են և որոշակիորեն լույս են սփռում I դարի Հայաստանի պատմության շատ հարցերի վրա:

Տակիտոսից ստորև բերված հատվածները, աննշան ուղղագրական սրբագրումներով, քաղել ենք Պ. Սոտնիկյանի թարգմանությունից (Կ. Տակիտոս, Երևան, 1941):

ԳԱՅՈՍ ԿՈՐՆԵԼԻՈՍ ՏԱԿԻՏՈՍ

ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## Գիրք երկրորդ

**Գլուխ 1.** Սիսեննա Ստատիլիոս (Տավրոսի) և Լուկիոս Լիբոնի կոնսուլության[1] ժամանակ Արևելքի պետությունները և Հռոմի պրովինցիաները[2] խռովության մեջ էին. դա սկսվում է պարթևների մոտ, որոնք Հռոմից խնդրած և ստացած թագավորին, թեպետև Արշակունիների տոհմից էր նա, իբրև օտարի՝ արհամարհանքով մերժում են: Դա Վոնոնն[3] էր, որը Փրաատի[4] (Հրահատի) կողմից տրված էր Ավգուստոսին[5] իբրև պատանդ: Չէ՞ որ Փրաատը, թեպետև հռոմեական զորքը և առաջնորդներին դուրս էր քշել[6], դեպի Ավգուստոսը ցույց էր տալիս հարգանքի բոլոր նշանները և իր բարեկամությունն ամրապնդելու նպատակով ուղարկել էր իր զավակների մի մասը Հռոմ, ոչ այնքան մեզնից վախենալու պատճառով, որքան համերկրացիների հավատարմությանը չվստահելու հետևանքով:

**Գլուխ 2.** Փրաատի և նրան հաջորդող թագավորների[7] վախճանից, ներքին արյունահեղությունների պատճառով պարթևների առաջավոր տոհմիկների կողմից Հռոմ եկան պատգամավորներ, որպեսզի

*նրա որդիներից երիցագույնին՝ Վոնոնին հրավիրեն: Կայսրն[8] իր համար այդ բանը պատվաբեր համարեց ու շուք և ուժ տվեց նրան: Եվ բարբարոսներն ընդունեցին նրան այն ուրախությամբ, որով համարյա միշտ ընդունում են նոր իշխանավորին: Շուտով նրանց տիրեց ամոթը. ասում էին, թե պարթևներն այլասերվել են, ուրիշ երկրից, թշնամիների սովորույթներով վարակված՝ թագավոր են խնդրել. Արշակունիների գահը հռոմեացիների պրովինցիաների մեջ է մտնում և իբրև պարգև է տրվում:*

*Ո՞ւր է Կրասսոսին խողխողողների և Անտոնիոսին դուրս քշողների փառքը, եթե պարթևներին պիտի տիրի կայսեր այն ստրուկը, որ այնքան տարիներ ստրկությունը համառաբար տարել է:*

***Գլուխ 3.** Այդպիսով հրավիրվում է Արտաբանը[9] (Արտավանը), արյունով[10] Արշակունի, մեծացած Դահաս[11] ժողովրդի մոտ, հենց առաջին իսկ բախման մեջ պարտվում ու հետո ուժեր է պատրաստում և տիրանում թագավորությանը: Պարտված Վոնոնի համար Հայաստանն ապաստարան ծառայեց[12], այն Հայաստանը, որի գահն այդ ժամանակ թափուր էր[13] և որը, գտնվելով պարթևների և հռոմեացիների ուժերի միջև, անհավատարիմ էր Անտոնիոսի ոճրագործության պատճառով[14], Անտոնիոսի, որը Հայաստանի թագավոր Արտավազդին, գրավելով բարեկամության անվան տակ, հետո շղթայել ու սպանել էր: Սրա որդի Արտաքսիասը (Արտաշեսը)՝[15] իր հոր հետ կապված հիշողության պատճառով՝ մեզ թշնամացած էր. նա պաշտպանեց թե՛ իր անձը և թե՛ պետությունն Արշակունիների ուժով: Մերձավորների նենգությամբ կատարված Արտաքսիասի սպանությունից հետո, Հայաստանին կայսեր կողմից տրվեց Տիգրանը[16], որին Տիբերիոս Ներոնի[17] շնորհիվ ուղեկցեցին դեպի իր թագավորությունը: Ո՛չ Տիգրանի, ո՛չ էլ սրա որդիների տիրապետությունը երկարատև չէր, թեպետ վերջիններն, ըստ օտար (ոչ-հռոմեական) սովորության, ամուսնացել էին միասին թագավորելու նպատակով[18]:*

***Գլուխ 4.** Հետո Ավգուստոսի հրամանով Արտավազդը[19] գահ բարձրացավ և տապալվեց ոչ առանց կորուստ պատճառելու մեզ: Այդ ժամանակ Հայաստանը խաղաղեցնելու համար՝ ընտրվում է Գայոս Կեսարը[20]: Սա ծագումով մեդ Արիոբարզանին[21] հայերի ցանկությամբ նշանակում է Հայաստանի պետ, նրա մարմնի նշանավոր գեղեցկության և շատ աչքի ընկնող քաջության պատճառով: Արիոբարզանը մահացավ պատահական մահով: Սրա հետնորդների[22] իշխանությունը հայերը չտարան: Կնոջ իշխանությունը փորձելուց (այդ կնոջ անունն էր Էրատո)[23] և սրան շուտով արտաքսելուց հետո, ան-*

*հաստատ լինելով, և ավելի շուտ առանց պետի մնալու, քան ազատության մեջ լինելու համար՝ հայերը թագավոր են ընդունում փախստական Վոնոնին: Բայց քանի որ Արտաբանը սպառնում էր, իսկ Վոնոնը չնչին պաշտպանություն էր գտնում Հայաստանում, և եթե պաշտպանվեր մեր ուժով՝ անխուսափելի կլիներ պատերազմը պարթևների դեմ, Սիրիայի փոխանորդ Կրետիկոս Սիլանոսը[24] կանչում է Վոնոնին և շրջապատում նրան հսկիչ պահակախմբով, սակայն պահպանում է նրա շուքն ու թագավորական անունը[25]:*

***Գլուխ 56.*** *Այս ժողովուրդը հնուց ի վեր տատանվող է թե՛ մարդկանց բնավորության և թե՛ երկրների տեղադրության պատճառով: Այդ երկիրը լայնորեն սահմանակից է մեր պրովինցիաներին և տարածվում է հեռու՝ մինչև Մեդերի աշխարհը: Մեծագույն պետությունների միջև է տեղավորված Հայաստանը և շատ հաճախ հայերը երկպառակ են, որովհետև նրանք թե՛ ատում են հռոմեացիներին և թե՛ նախանձում են պարթևներին: Այդ ժամանակաշրջանում Վոնոնին հեռացնելուց հետո, թագավոր չունեին, սակայն ժողովրդի տրամադրությունը հակվում էր դեպի Պոնտոսի թագավոր Պոլեմոնի որդի՝ Զենոնը[26], որովհետև հենց մանկությունից նա կրթվել էր հայերի սովորույթներով ու կենցաղով. որսագնացության, խրախճանքների և բարբարոսների մոտ հաճախ գործադրվող այլ սովորությունների միջոցով նա իրեն հետ էր կապել թե՛ ազնվականներին և թե՛ հասարակ ժողովրդին: Այսպիսով, Գերմանիկոսն[27] Արտաքսատա (Արտաշատ) քաղաքում մեծամեծների հավանությամբ և շուրջը հավաքված բազմության ներկայությամբ՝ նրա գլխին դրեց թագավորական զարդանշանը: Մնացածները հարգանք մատուցելով թագավորին, ողջունում էին՝ Արտաշես անվանելով: Այսպես կոչեցին նրան քաղաքի անվան օրինակով[28]:*

*1. Սիսեննա Ստատիլիոսն ու Լուկիոս Սկրիբոնիոս Լիբոնը կոնսուլներ են եղել 16 թվականին:*

*2. Տակիտոսը նկատի ունի այն հանգամանքը,որ այդ ժամանակ կայսրության հյուսիսարևմտյան ծայրամասերում գտնվող պրովինցիաները՝ Գերմանիան ու Պանոնիան բռնկված էին ապստամբական բոցերով և որտեղ կայսրությունը կրում էր մեծ անհաջողություններ:*

*3. Սա Պարթևստանի Վոնոն Արշակունի թագավորն էր՝ Հրահատ IV-ի որդին: Ք. ա. 10 թ. Հրահատ IV-ը իր չորս որդիներին, որոնց թվում և Վոնոնին, ինչպես նաև չորս թոռներին ուղարկել էր Հռոմ:*

*4. **Փրաատ** – Պարթևստանի Հրահատ IV թագավորն էր:*

*5. Խոսքը Հռոմի առաջին կայսր Գայոս Օկտավիանոս Օգոստոսի մասին է:*

*6. Պատմագիրը նկատի ունի Ք. ա. 36 թ. Անտոնիոսի պարտությունը և Օպպիոս Ստատիանոսի երկու լեգեոնի շրջապատումն ու ջախջախումը պարթևների կողմից:*

*7. Հրահատ IV-ի սպանությունից հետո պարթևական գահ են բարձրանում նրա կրտսեր որդին՝ Հրահատակը (Ք. ա. 2-Ք. հ. 4) և Օրոդես III-ը (4-7):*

*8. Այսինքն՝ Օգոստոսը:*

*9.* ***Արտաբան*** *- Պարթևստանի թագավոր Արտավան III-ն է (12-38): Մինչ գահ բարձրանալը նա Վրկանից աշխարհի և Կրմանի կառավարիչն էր:*

*10. Արտավանը միայն մոր կողմից էր Արշակունի. գահընկեց անելով Վոնոն Արշակունուն՝ նա հիմնադիր դարձավ Արշակունյաց հարստության կրտսեր ճյուղին:*

*11. Սկյութական ցեղ է, որն ապրում էր Կասպից ծովից հարավ-արևելք ընկած տարածքում:*

*12. Ապաստան գտնելով Հայաստանում՝ Վոնոնն այստեղ հռչակվում է Մեծ Հայքի թագավոր (12-16):*

*13. Մինչ այդ հայերը գահընկեց էին արել էրատո Արտաշեսյանին (Հայոց թագուհի երրորդ անգամ՝ 6-11):*

*14. Տակտիոսը նկատի ունի Արտավազդ II-ի ստոր ձերբակալությունն ու մահապատիժը, որը կազմակերպել էին Անտոնիոսն ու Կլեոպատրան:*

*15. Սա Հայաստանի թագավոր Արտաշես II-ն է՝ Արտավազդ II-ի ավագ որդին:*

*16.* ***Տիգրան*** *- Արտավազդ II-ի կրտսեր որդին է: Նրան Օկտավիանոսը Ալեքսանդրիայից տարել էր Հռոմ, ուր տասը տարի ապրելով՝ յուրացրել էր հռոմեացիների բարքերն ու սովորությունները, նրանց լեզուն: Իր ավագ եղբոր՝ Արտաշես II-ի սպանությունից հետո հռոմեացիների կողմից հռչակվել է Հայաստանի թագավոր:*

*17.* ***Տիբերիոս Կլավդիոս Ներոն*** *- արևելքում հռոմեական բանակների գլխավոր հրամանատար, Օգոստոսի որդեգիրը, հետագայում՝ Հռոմի կայսր:*

*18. Պատմագիրը նկատի ունի Տիգրան III-ի զավակներ՝ արքայից արքա Տիգրան IV-ի և վերջինիս խորթ քույր էրատո թագուհու ամուսնական կապը:*

*19. Խոսքը Արտավազդ II-ի որդու՝ Արտաշես II-ի ու Տիգրան III-ի կրտսեր եղբայր՝ Արտավազդ III-ի մասին է, որը շուրջ 25 տարի գտնվում էր Հռոմում և Օգոստոսի կարգադրությամբ՝ գահընկեց արված Տիգրան IV-ի փոխարեն հռչակվեց Հայոց թագավոր (5-2):*

*20. Սա Օգոստոսի թոռն ու որդեգիրն էր, որը Ք. ա. 2 թ. հռոմեական մեծ բանակով ուղարկվել էր Հայաստանը հանդարտեցնելու:*

*21.* ***Մեդ*** *(Մար) Արիոբարզան - Ատրպատականի Արիոբարզան թագավորն է,*

*Անտոնիոսի բարեկամ Մար Արտավազդի որդին, իգական գծով՝ Արտաշեսյան: Ք. հ. 2 թ. Գայոս Կեսարը սրան հռչակում է Հայոց թագավոր:*

*22. Նկատի ունի Արիոբարզանի որդուն՝ Մեծ Հայքի և Ատրպատականի թագավոր Արտավազդ IV Մարին:*

*23. Թագուհի Մեծ Հայքի (8-5, 2-1, 6-11):*

*24.* ***Քվինտոս Կրետիկոս Սիլանոս*** *- 7 թ. կոնսուլ, Սիրիա պրովինցիայի կուսակալ (11-17): Տիբերիոսի կարգադրությամբ նա 16 թ. իր մոտ է հրավիրում Վոնոնին և այլևս թույլ չի տալիս ետ վերադառնալ Հայաստան:*

*25. Տարիներ շարունակ Վոնոնը ապրում էր Անտիոքում, իսկ այնուհետև՝ Կիլիկիայի Պոմպեուպոլիս քաղաքում: Կաշառելով իրեն հսկող պահակազորը՝ 19 թ. Վոնոնը փորձ է անում փախչել Հայաստան, սակայն այդ ավարտվում է անհաջողությամբ և նա սպանվում է (19 թ.):*

*26. Զենոնը Պոնտոսի Պոլեմոն I թագավորի և Տիբերիոս կայսեր ազգականուհի Պյութագորայի որդին էր, որին 18 թ. հռոմեացիները հռչակեցին Մեծ Հայքի թագավոր (18-34):*

*27. Խոսքը Տիբերիոս կայսեր եղբորորդու և նրա որդեգրի՝ հռոմեական հայտնի զորավար Գերմանիկոս Հուլիոս Կեսարի (Ք. ա. 15 - Ք. հ. 19) մասին է, եղել է 12 և 18 թվականների կոնսուլ:*

*28. Տակիտոսը չփոթում է. Զենոնին հայերը Արտաշես կոչեցին ոչ թե Արտաշատ «քաղաքի անվան օրինակով», այլ սա դինաստիական «Արտաշէս» անունն էր, որը սիրելի էր հայերին ու հիշեցնում էր Արտաշեսյանների հզոր թագավորության օրերը:*

## ՎՐԱՑԱԿԱՆ ԱՐՔԱՅԱԿԱՆ ՏԱՆ ՀԱՎԱԿՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԾ ՀԱՅՔԻ ԳԱՀԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԸՍՏ ԳԱՅՈՍ ԿՈՌՆԵԼԻՈՍ ՏԱԿԻՏՈՍԻ

*ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### Գիրք վեցերորդ

***Գլուխ 31.*** *Գայոս Կեստիոսի և Մարկոս Սերվիլիոսի կոնսուլության ժամանակ[1] պարթև մեծամեծներն եկան Հռոմ, առանց Թագավոր Արտաբանի գիտության: Նա (Արտաբանը), վախենալով Գերմանիկոսից, հավատարիմ էր հռոմեացիներին ու հավասարապես էր վերաբերվում յուրայիններին: Շուտով նա մեր նկատմամբ գոռոզացավ և դաժանացավ իր հայրենակիցների վերաբերմամբ: Պարծենալով չուրջը գտնվող ժողովուրդների դեմ հաջող վարած պատերազմներով, արհամարհելով Տիբերիոսի անուժ ծերությունը, տենչալով գրավել Հայաստանը, Արտաբանն Արտաշես Թագավորի մահից հետո իր որդիներից երիցագույնին՝ Արշակին[2], Թագավոր դրեց Հայաստանում: Որովհետև Արշակունիների ցեղից ոչ ոքի չէին կարող պետության գլուխ դնել, քանի որ որ մեծ մասը սպանված էր Արտաբանի կողմից կամ Թե դեռ չէին հասունացած, սրանք հրավիրեցին նաև այլ մեծամեծների ու Հռոմից պահանջում էին Փրաատ Թագավորի որդի Փրաատին[3], ասելով, Թե կարիք ունեն միայն անվան ու հոգատարի, որպեսզի կայսեր հաճությամբ Արշակի ցեղը հանդես գա Եփրատի ափին:*

***Գլուխ 32.*** *Հենց այդ էր ցանկանում Տիբերիոսը: Նա չքազարդում է Փրաատին և, նախապատրաստելով հայրական Թագի համար, գոտի է կապում նրան: Մինչդեռ Փրաատը Թողնելով հռոմեական կենցաղը, որին այնքան տարիներ ընտելացել էր, ձեռք էր բերում պարԹևների սովորությունները, դեռ չուժեղացած այդ հայրենի սովորությունների մեջ՝ հիվանդությունից մեռավ Սիրիայի մոտ: Բայց Տիբերիոսը ձեռնարկած գործը չԹողեց: Արտաբանի դեմ ախոյան է ընտրում նույնպիսի ծագում ունեցող Տիրիդատին[4], իսկ Հայաստանը հետ գրավելու համար՝ իբերացի (վրացի) ՄիԹրիդատին[5] (Միհրդատին): Միացնում է նրան վերջինիս եղբայր՝ Փարասմանին[6] (Փարսմանին), որի ձեռքումն է գտնվում ցեղի իշխանությունը: Այն բոլոր ձեռնարկությունների, որ նախապատրաստվում էին Արևելքում, գլուխ էր կանգնեցրել Լուկիոս Վիտելլիոսին:*

**Գլուխ 33.** Եվ թագավորիկներից առաջինը Միթրիդատն (Միհրդատն) էր, որ ստիպեց Փարասմանին թե՛ նենգությամբ և թե՛ ուժով օգնել իր ձեռնարկած գործերին: Գտնված գայթակղիչներն Արշակի ծառայողներին շատ ոսկով հանցագործության են դրդում: Միաժամանակ իբերացիք մեծ զորքով ներս են խուժում Հայաստան և տիրանում Արտաշատ քաղաքին: Երբ Արտաբանն իմանում է այդ, պատրաստում է իր որդի Օրոդին, իբրև վրեժառուի տալիս է պարթևական զորք և մարդիկ է ուղարկում, որպեսզի վարձու օժանդակ ուժեր պատրաստեն: Դրան հակառակ Փարասմանը միացնում է ալբաններին (աղվաններին) և հրավիրում է սարմատներին: Սրանց սկեպտուխները[7], երկու կողմից էլ նվերներ ընդունելով, համաձայն իրենց ցեղի սովորության, իրենց վրա են վերցնում հակադիր պարտականություններ: Սակայն իբերները, այդ տեղերի տերը հանդիսանալով, Կասպյան ճանապարհով արագորեն բաց են թողնում Հայաստանի վրա սարմատներին. իսկ ովքեր գալիս էին պարթևներին օգնելու, հեշտությամբ հետ էին մղվում, որովհետև թշնամին փակել էր մյուս մուտքերը. մնում էր մի մուտք, որը գտնվում էր ծովի և Ալբանիայի սահմանամերձ լեռների[8] միջև և ամառը խանգարվում էր, որովհետև պասսատային քամիների հետևանքով ծանծաղուտները լցվում են ջրով, իսկ ձմեռը հարավային քամին հետ է քշում ջրերը, և ծովը ներս մղելով՝ բացում է ափերի նեղ մասերը:

**Գլուխ 34.** Այդ ժամանակամիջոցում Փարասմանը, ստանալով օժանդակ ուժեր, մարտի էր կոչում դաշնակիցներից զուրկ Օրոդին, և հարձակվեց մարտից խուսափող թշնամու վրա: Հեծելազորով մոտենում էր բանակատեղիին և թշնամական գործողություններով խանգարում ձիերի կերի գործը: Հաճախ պաշարման ձև տալով, շրջափակում էր նրան պահակախմբերով, մինչև որ վիրավորանքներին անսովոր պարթևները շրջապատում են թագավորին[9] և մարտ են պահանջում: Սակայն պարթևների ուժը միայն հեծելազորն էր, իսկ Փարասմանն ուժեղ էր նաև հետևակներով: Արդարև, իբերները և ալբաններն, ապրելով անտառապատ լեռնոտ վայրերում, ավելի են ընտելացել բիրտ կյանքին ու համբերատարությանը:

**Գլուխ 35.** Արդեն ալբանները և իբերները բռնում էին հակառակորդին, զերքից դուրս էին գցում, մարտը թշնամու համար դարձնում էին ճգնաժամային. սրանց ուժեղ հարվածում է վերևից հեծելազորը, իսկ մյուս կողմից՝ հետիոտն զորքը, որը մոտիկից վերքեր է հասցնում: Այդ միջոցին Փարասմանն ու Օրոդը, որ մերթ հանդես էին գալիս քաջաբար կռվողների մոտ և մերթ օգնում էին տատանվողներին,

*նկատելի դառնալով և դրա շնորհիվ իրար ճանաչելով, ձիերի վրա հարձակվում են իրար դեմ՝ գոռալով և գործադրելով հարձակման զենքեր: Փարասմանն ավելի համառ էր կռվում. սաղավարտի վրայով նա վերք հասցրեց հակառակորդին և էլ չկարողացավ կրկնել հարվածը, որովհետև ձին նրան առաջ քշեց. վիրավորին պաշտպանում էին թիկնապահներից ամենաուժեղները: Սակայն սպանված լինելու անհիմն լուրին հավատացին, և այդ ահաբեկեց պարթևներին, և նրանք հաղթությունը կորցրին:*

***Գլուխ 36.*** *Շուտով Արտաբանը պետության բովանդակ ուժով գնաց վրեժ լուծելու: Իբերներն ավելի լավ էին կռվում, որովհետև ծանոթ էին տեղերին: Բայց նա (Արտաբանը) չէր հեռանա, եթե Վիտտելլիոսը, հավաքելով լեգեոնները և լուր հանելով, թե մտադիր է հարձակվել Միջագետքի վրա, հռոմեական սպառնալի պատերազմի վտանգ ստեղծած չլիներ: Այդ ժամանակ Արտաբանը թողնում է Հայաստանը, դրանից հետո նրա գործերը ձախողվում են[10]:*

## *Գիրք տասնմեկերորդ*

***Գլուխ 8.*** *Մոտավորապես այդ ժամանակ[11] Միթրիդատը (Միհրդատը), որը Հայաստանի պետն էր... և որը Գայոս Կեսարի (հրամանով), ինչպես ես հիշատակել էի, շղթայվել էր[12], Կլավդիոսի խորհրդով իր թագավորությունը վերադարձավ, վստահ լինելով Փարասմանի օժանդակության վրա: Այս վերջինը, լինելով իբերների թագավոր և միաժամանակ Միթրիդատի եղբայրը, հայտնում էր, որ պարթևների մոտ երկպառակություն է, բարձրագույն իշխանության տիրապետումը տատանման մեջ է և մանր գործերը չեն արժանանում ոչ մի ուշադրության: Արդարև Գոտարզը[13], չափազանց շատ դաժանություններ անելով, նախապատրաստել էր սպանել նաև իր եղբայր Արտաբանին[14], սրա կնոջն ու տղային. այդ սարսափ էր ազդել մնացածներին, և կանչեցին Վարդանին[15]: Այս վերջինը, մեծ ձեռնարկումների մեջ վճռական լինելով, երկու օրվա ընթացքում արշավելով տիրում է երեք հազար ստադիոն[16] տարածություն և անտեղյակ ու ահաբեկված Գոտարզին քշում է:*

***Գլուխ 9.*** *Այժմ, երբ Արևելքի զորքերը բաժանված էին և հայտնի չէր, թե որ կողմը կթեքվեն այդ ուժերը, Միթրիդատին պատեհ առիթ տրվեց գրավելու Հայաստանը, ընդ որում ամրացված բարձունքները պիտի ոչնչացվեին հռոմեական զինվորի ուժով, միաժամանակ իբերների (վրացիների) զորքերը պիտի ասպատակեին դաշտերը: Եվ իս-*

կապես չդիմադրեցին, երբ ճակատամարտի հանդգնած մարզպան Դեմոնաքսի[17] ուժերը ցրվեցին: Փոքր-ինչ դանդաղեցրեց գործը Փոքր Հայքի Թագավոր Կոտիսը[18], որի կողմն էին անցել մեծամեծներից ոմանք. հետո նա զսպվեց չնորհիվ կեսարի[19] նամակի, և բոլորն անցան Միթրիդատի կողմը, որը դուրս եկավ ավելի դաժան, քան համար էր նոր Թագավորության:

## Գիրք տասներկուերորդ

**Գլուխ 44.** Նույն տարին[20] հայերի և իբերների միջև պատերազմ ծագեց. այդ եղավ պատճառ այն ծանրագույն չարժումների, որ տեղի ունեցան պարթևների և հռոմեացիների միջև: Պարթևական ցեղի իշխողն էր Վոլոգեսը[21], որը մոր կողմից հունական ծագում ունեցող հարճից էր. եղբայրների զիջողության հետևանքով՝ նա ստացավ Թագավորությունը. իբերների վրա իշխում էր Փարասմանը հնագույն իրավունքի հիման վրա, իսկ նրա եղբայր Միթրիդատը մեր զորքերի չնորհիվ տիրում էր Հայաստանին: Փարասմանն ուներ Ռադամիստ (Հռադամիզդ) անունով մի որդի: Սա հայտնի էր բարձր հասակով, վայելչակազմությամբ և աչքի ընկնող մարմնական ուժով. սովորել էր հայրենական արվեստները[22], դրացիների մոտ ուներ փառավոր համբավ: Նա այնքան անզուսպ էր, որ չէր կարողանում իր իղձը Թաքցնել, և հաճախ էր զանգատվում, որ հոր ծերության պատճառով կաչկանդված է Իբերիայի չափավոր սահմաններով: Այդպիսով, Փարասմանն, իր ալևոր ծերության պատճառով, վախենալով ճարպիկ կարողության տեր պատանուց, որը հենվում էր իր համերկրացիների ուժեղ համակրանքի վրա, սկսեց նրան ներշնչել այլ հույսեր և ցույց էր տալիս Հայաստանը, ասելով, որ պարթևներին դուրս քչելուց հետո ինքն է տվել Միթրիդատին այդ երկիրը. բայց պետք է հետաձգել ուժի գործադրությունը, լավագույնն է դավադրությունը, որով կարելի է անզգույշ Միթրիդատին ոչնչացնել: Այդպիսով, Ռադամիստը, ձևացնելով Թե գժտված է հոր դեմ՝ իբր Թե խորթ մոր ատելությունը չտանելու պատճառով, ուղևորվում է հորեղբոր մոտ: Վերջինիս կողմից նա ընդունվում է իբրև որդի մեծ սիրալիրությամբ ու հարգանքով: Ռադամիստը Հայաստանի մեծամեծներին գայթակղեցնում է հեղաշրջում կատարելու, այն ինչ Միթրիդատը ոչ միայն չգիտեր այդ մասին, այլ նաև չուք ու զարդ էր տալիս նրան:

**Գլուխ 45.** Հաշտվելու պատրվակի տակ Ռադամիստը վերադառնում է հոր մոտ և հայտնում է, Թե ինչ որ կարելի է կատարել նեն-

գամտությամբ՝ պատրաստ է, մնացածը պետք է զենքով ձեռք գցել: Այդ ժամանակամիջոցում Փարասմանը հնարում է պատերազմելու առիթներ, ասելով, թե երբ ինքը կռվում էր ալբանների դեմ և օգնություն էր կանչում հռոմեացիներին, եղբայրը նրան ընդդիմանում էր, թե ինքը այդ վիրավորանքի համար պիտի գնա վրեժ առնելու և կործանելու նրան: Միաժամանակ նա մեծ զորք հանձնեց իր որդուն: Հանկարծակի ներխուժումից ահաբեկված ու դաշտավայրերից զրկված Միթրիդատին Ռադամիստը քշեց Գորնեաս[23] (Գառնի) ամրոցը, որն ապահով էր թե՛տեղադրության և թե՛ հռոմեական կայազորի պաշտպանության հետևանքով: Այդ կայազորի հրամանատարներն էին պրեֆեկտ[24] Կելիոս Պոլլիոնը և ցենտուրիոն[25] Կասպերիոսը: Բարբարոսներին ոչ մի բան այնքան խորթ չէ, որքան պաշարման մեքենաների և խորամանկ հնարամտությունների գործադրությունը (իսկ մեզ՝ պատերազմական գործողությունների այդ մասը շատ լավ ծանոթ է): Այդպիսով, Ռադամիստը, կամ իզուր և կամ թե կորուստներ տալով, փորձում է վերցնել ամրությունները: Դրանից հետո նա ձեռնարկում է ամրոցի պաշարման և, որովհետև նրա ուժն արհամարհվում է, նա կաշառում է ագահ պրեֆեկտին: Կասպերիոսն աղերսում է թույլ չտալ, որ դաշնակից թագավորը և հռոմեական ժողովրդի նվեր՝ Հայաստանը տապալվեն հանցագործության և կաշառակերության պատճառով: Վերջապես, որովհետև Պոլլիոնը նենգորեն մատնանշում էր թշնամու մեծաքանակ լինելը, իսկ Ռադամիստը՝ հոր հրամանները, Կասպերիոսը զինադադար է կնքում և հեռանում, որպեսզի, եթե չկարողանա վախեցնելով Փարասմանին պատերազմից հետ կանգնեցնել, տեղեկացնի Սիրիայի կառավարիչ՝ Ումմիդիոս Կվադրատոսին, թե ինչ դրության մեջ է Հայաստանը:

**Գլուխ 46.** Ցենտուրիոնի հեռանալուց հետո պրեֆեկտը, կարծես ազատված լինելով հսկիչից, սկսում է հորդորել, Միթրիդատին՝ դաշինքը վավերացնել, ուշադրության առնելով թե՛ եղբայրական մերձավորությունն առհասարակ և՛ Փարասմանի տարիքով ավագ լինելը և թե՛ ազգակցության այլ հանգամանքները, ասելով, որ Միթրիդատը ամուսնացած է նրա աղջկա հետ, որ նա Ռադամիստի աներն է, որ իբերները դաշինքը չեն մերժում, թեպետև տվյալ վայրկյանում նրանք ավելի ուժեղ են, որ նա չունի այլ հենարան՝ բացի ամրոցից, որը պաշարեղենի կարիք ունի, որ նա պիտի ձգտի ընդունել անարյուն դաշինքի պայմանները և ոչ թե զենքով փորձի այն՝ ինչ կասկածելի է: Այդ ժամանակամիջոցում Կասպերիոսը եկավ Փարասմանի մոտ և ազդու կերպով պահանջում էր, որպեսզի իբերները հետ կանգնեն պաշարու-

*մից: Փարասմանը, բացահայտորեն անորոշ և չատ հաճախ գիջող պատասխաններ տալով, գաղտնի սուրհանդակների միջոցով համոզում է Ռադամիստին չտապեցնել ամրոցի առումն ինչ ձևով ուզում է լինի: Խայտառակ արարքների վարձատրությունը բարձրանում է, և Պոլլիոնը ծածուկ կաչառքներով դրդում է զինվորներին, որ խաղաղություն պահանջեն և սպառնան լքել կայազորը: Այդ անհրաժեշտությունից դրդված՝ Միթրիդատն ընդունում է դաշն կնքելու օրն ու տեղը և ամրոցից դուրս է գալիս:*

***Գլուխ 47.*** *Սկզբում Ռադամիստն ընկավ նրա գիրկը և ձևացնում էր, թե հնազանդ է, անվանելով նրան հայր ու աներ: Ավելացնում էր, երդվելով, թե բռնություն չի գործադրի ո՛չ թրով, ո՛չ էլ թույնով. միաժամանակ քաշում տանում է մերձակա պուրակը, ասելով, որ իր հրամանով այնտեղ զոհաբերություն է նախատեսված և պատրաստված, որպեսզի խաղաղությունն ամրապնդվի աստված-վկաներով: Թագավորներն ունեն մի սովորություն, որ ամեն անգամ, երբ իրար են հանդիպում դաշն կնքելու համար, միախառնում են իրենց աջ ձեռքերը, բութ մատները միասին կապում և հանգույցով ամրացնում: Հետո, հենց որ արյունը դեպի ծայրանդամներն է հոսում, թեթև ծակոցով արյունը հանում և փոխադարձաբար լիզում են: Այդ տեսակ դաշինքը համարվում է գաղտնի ուժ ունեցող, իբրև փոխադարձ արյունով սրբագործված: Սակայն այդ ժամանակ այդ կապերը դնողը ձևացնում է, թե ընկավ, բռնում է Միթրիդատի ծնկներից և նրան փռում է գետին: Միաժամանակ մոտ են վազում չատ մարդիկ և շղթայում են: Եվ նրան քարշ էին տալիս ոտքի շղթայից, իսկ դա բարբարոսների մոտ համարվում է խայտառակություն: Հետո հասարակ ժողովուրդը, որին Միթրիդատը դաժան էր պահում, հայհոյանք է թափում և սպառնում ծեծով. և՛ ընդհակառակը, կային այնպիսիները, որոնք խղճում էին բախտի այդպիսի փոփոխության համար: Նրա հետևից գնացող կինը փոքրիկ երեխաներով ուժգին հեծկլտում էր,*



*լացի ձայնը լսվում էր չուրջը: Նրանց տանում են առանձին, ծածկված սայլերով, մինչև որ կհարցնեն Փարասմանի հրամանները: Փարասմանի թագավորելու տենչն ուժեղ էր, քան զգացմունքը դեպի եղ-*



*Կոմմագենեի Հայոց արքա*
*Անտիոքոս I Երվանդունին և Վահագն աստվածը*
*(Ք. ա. I դար)*

*բայրն ու աղջիկը. նրա հոգին հանցագործությունների համար էր պատրաստված. սակայն նա խնայեց իր տեսողությունը և ցանկացավ, որ նա սպանվի ոչ իր աչքերի առաջ: Եվ Ռադամիստը, իբր թե հավատարիմ իր երդմանը, իր քրոջ և հորեղբոր դեմ չգործադրեց ո՛չ թուր, ո՛չ էլ թույն, այլ սպանում է նրանց՝ գցելով գետին և ծածկելով բազմաթիվ ու ծանր գորգերով: Միթրիդատի որդիները նույնպես սպանվում են, որովհետև ողբացել էին ծնողների սպանությունը:*

***Գլուխ 48.*** *Եվ Կվադրատոսը, իմանալով, որ Միթրիդատը դավաճանորեն սպանված է և թագավորությունը գրավել են մարդասպանները, խորհրդակցություն է հրավիրում, հաղորդում է փաստերը և խորհրդակցում է, արդյոք վրեժ առնի: Հանրային պատիվը քչերի մոտ է հոգատարության առարկա, շատերն արտահայտվում են հօգուտ անվտանգության: Բոլոր արտաքին հանցագործությունները պետք է ուրախությամբ ընդունվեն, նույնիսկ ատելության սերմեր պետք է ցանել, ինչպես հաճախ հռոմեական պրինցեպսները[26] հենց նույն Հայաստանը, առատաձեռնության պատրվակի տակ, շնորհել են բարբարոսներին՝ նրանց ոգին խառնակելու նպատակով: Թող իշխի Ռադամիստը հանցանքով ձեռք բերածին, միայն թե լինի ատելի, փառազուրկ, որովհետև այդ ավելի ձեռնտու է, քան եթե նա փառքով արտաքսված լիներ: Այդ կարծիքը հավանություն ստացավ: Սակայն որպեսզի չթվա, թե հանցանքը խրախուսվել է և կայսրը տարբեր կարգադրություն չունի, Փարասմանի մոտ ուղարկվում են սուրհանդակներ՝ ասելու, որ նա հեռանա Հայաստանի սահմաններից ու հետ կանչի իր որդուն[27]:*

***Գլուխ 50.*** *Որովհետև Վոլոգեսը կարծում էր, որ հասել է առիթը հարձակվելու Հայաստանի վրա, որը իր նախնիների[28] տիրապետության տակ էր և որին այժմ տիրում է օտար թագավորը՝ շնորհիվ զազրելի արարքի, զորք է ժողովում և պատրաստում է իր եղբայր Տիրիդատին այնտեղ թագավոր դարձնել, որ իր ընտանիքի որևէ մասն առանց իշխանության[29] չմնա: Պարթևները հարձակվում են, իբերներն առանց դիմադրելու արտաքսվում են, Հայաստանի Արտաքսատա (Արտաշատ) և Տիգրանակերտա (Տիգրանակերտ) քաղաքներն ընդունում են նրա հպատակությունը: Հետո դժան ձմեռը, ինչպես և նախատեսված պաշարի պակասությունը և այդ երկու պատճառներից ծագած համաճարակը, ստիպում են Վոլոգեսին թողնել երկիրը: Ռադամիստն ավելի ահարկու, քան առաջ, ներխուժում է լքված Հա-*

յաստան, իբրև դավաճան երկիր, որը պատեհ ժամին պատրաստ է նորից ապստամբելու: Իսկ հայերը... համբերությունից դուրս են գալիս և զինված շրջապատում են թագավորական պալատը:

**Գլուխ 51.** Ռադամիստին չէր մնում փրկվելու այլ միջոց, քան ապավինել ձիերի արագավազությանը: Ձիերը փախցրին թե՛ նրան և թե՛ կնոջը: Բայց հղի կինը՝ փախուստի առաջին մասը թշնամիներից վախենալու և ամուսնուն սիրելու պատճառով մի կերպ տարավ. հետո, երբ չարունակական արշավընթացից նրա ընդերքն ու արգանդը ուժգին կերպով ցնցահար են լինում, սկսում է աղերսել, որ իրեն պատվավոր մահով ազատի գերության անարգանքներից: Ռադամիստը սկզբում գրկելով բարձրացնում է և քաջալերում, մերթ զարմանալով նրա քաջությանը, մերթ հիվանդագին տանջվելով վախից, թե ուրիշը կտիրանա կնոջը, եթե ինքը նրան լքի: Վերջապես սիրո ուժի ազդեցության տակ և անծանոթ չլինելով հանցագործություններին, նա մերկացնում է նրանը[30] և վիրավոր կնոջը քարշ է տալիս Արաքսի ափին և հանձնում գետին, որպեսզի նույնիսկ մարմինը տարվի-հեռանա: Ինքը գլխապատառ սլանում է հայրենական թագավորությունը՝ Իբերիա (Վրաստան): Այդ ժամանակամիջոցում հովիվները, շնորհիվ ծփանքի հանդարտության, նկատում են, որ Զենոբիան (այդ էր կնոջ անունը) շնչում է, ուշադրության են առնում կյանքի բացահայտ նշաններն ու ազնիվ արտաքինից եզրակացնում են, որ հասարակ ծագում ունեցող կին չէ այդ, կապում են վերքը և գործադրում են գյուղական դեղամիջոցներ. անունը և արկածն իմանալուց հետո, տանում են նրան Արտաքսատա քաղաքը. այնտեղից հասարակական ծախսով կինն ուղարկվում է Տիրիդատի մոտ, ընդունվում է սիրալիր և ապրում է թագավորական կենցաղով[31]:

1. Այսինքն՝ Արտավան III թագավորի ավագ որդին էր ու թագաժառանգը, որը Զենոն-Արտաշեսի մահից հետո հռչակվեց Մեծ Հայքի թագավոր (34-35): Որոշ ուսումնասիրողներ գտնում են, որ այս Արշակը հայկական ավանդությունների Սանատրուկ I-ն է (տե՛ս **Մ. Աբեղյան,** Երկեր, հատ. Ա, Երևան, 1966, էջ 168):

2. Փրաատը (Հրահատ) Հրահատ IV-ի կրտսեր որդին էր, Պարթևստանի թագավոր Վոնոն Արշակունու եղբայրը: Սակայն այնպես էլ պարթևական գահի հավակնորդ այս Հրահատը գահ չբարձրացավ, նա մահացավ 35 թ. Ասորիքում:

4. **Տիրիդատ** (Տրդատ) - Խոսքը Հրահատ IV-ի թոռան մասին է, որը, որպես պատանդ, տարիներ շարունակ գտնվում էր Հռոմում: Արտավան III-ից դժգոհ պարթևական ավագանին 36 թ. սրան հռչակում է Պարթևստանի թագավոր՝ Տրդատ III անունով (36-37):

*5. **Միթրիդատ** (Միհրդատ) – վրացական Փառնավազյան թագավորական տան ներկայացուցիչ, իգական գծով Արտաշեսյան շառավիղ, եղբայրը Իբերիայի թագավոր Փարսման I-ի: Հայկական թագի հռոմեական այս դրածոն 35 թ. թունավորել է տալիս Արշակ-Սանատրուկին և բարձրանում է գահ (35–37):*

*6. Իբերիայի թագավոր Փարսման I Փառնավազյանն է (35–74), որի կինը Արտաշեսյան հարստության շառավիղ Համազասպուհին էր:*

*7. **Սկեպտուխ** (գայիսոնակիր) – բարձրագույն պաշտոնյա կամ առաջնորդ սկյութական-սարմատական (ալանական) ցեղերի մոտ:*

*8. Խոսքը Դերբենդի անցքի մասին է:*

*9. Պատմագիրը նկատի ունի Արտավան III-ի որդի Օրոդին (Օրոդես):*

*10. Տակիտոսը ակնարկում է 39 թ. հռոմեական դրածո Տրդատ III Արշակունու կողմից Արտավան III-ի գահընկեցությունը և նրա փախուստը Վրկանից աշխարհ: Սակայն մեկ տարի անց՝ 37 թ. Արտավանը նորից վերագրվում է իր գահը:*

*11. Այսինքն՝ 43 թվականին:*

*12. Ինչպես երևում է Տակիտոսի սույն հատվածից, նախքան այս դեպքը, նա շարադրել է Կալիգուլա կայսեր (37–41) կողմից Միհրդատի գահընկեցության ու ձերբակալության մասին (37 թ.) իրողությունները, սակայն «Տարեգրություններ» այդ մասը չի պահպանվել, հետևաբար անհայտ է մնում կայսեր այդ գործողության դրդապատճառը: Միհրդատը աքսորում մնացել է ուղիղ վեց տարի (37–43) և միայն Կլավդիոս Դրուզ կայսեր (41–54) կարգադրությամբ է, որ նա երկրորդ անգամ բարձրանում է հայկական գահ (47–51):*

*13. **Գոտարզ** (Գոդերձ) – Արտավան III-ի եղբոր՝ Ատրպատականի թագավոր Վոնոնի ավագ որդին է, որը Արտավան III-ի մահից հետո հռչակվեց Պարթևստա - նի թագավոր, Գոտարզ II (ընդմիջումներով՝ 38–51):*

*14. Տակիտոսը շփոթում է. Արտավանը Գոտարզի ոչ թե եղբայրն էր, այլ հորեղբայրը:*

*15. **Վարդան** – Գոտարզի կրտսեր եղբայրն է, նրա մրցակիցը պարթևական գահի համար: Գահընկեց անելով եղբորը՝ հռչակվել է թագավոր. Վարդան I (39–47):*

*16. Երկարության միավոր, որը հավասար է մոտավորապես 185 մետրի:*

*17. **Մարզպան Դեմոնաքս** (Demonax praefectus) – Հայոց սպարապետ Գիսակ Դիմաքսյանն է, որը գլխավորել է հայ ժողովրդի պայքարը երկրի անկախության համար հռոմեա-իբերական միացյալ ուժերի դեմ:*

*18. Սա Պոնտոսի Պոլեմոն I թագավորի թոռն էր, Պոլեմոնի դստեր՝ Անտոնինա Տրիբոնիայի ու Թրակիայի Կոտիս թագավորի որդին, Մեծ Հայքի թագավոր Զենոն-Արտաշեսի քրոջ որդին: Եղել է Կալիգուլա կայսեր ամենամտերիմ անձնավորություններից մեկը, 38 թ. նրա կողմից նշանակվել է վերականգնված Փոքր*

Հայքի թագավորության գահակալ: Ըստ երևույթին, նա ճանաչվել է նաև Մեծ Հայքի թագավոր, սակայն այստեղ նրա իշխանությունն ունեցել է ձևական բնույթ և երկիրը փաստորեն կառավարել է Հայոց սպարապետ Գիսակ Դիմաքսյանը (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. I, ԳԱ հրատ., էջ 722):

19. Խոսքը Կլավդիոս Դրուզ կայսեր մասին է:



**Կորբուլոնի արձանագրությունը Խարբերդից**

20. Այսինքն՝ 51 թվականին:

21. Նկատի ունի Պարթևստանի թագավոր Վաղարշ I -ին (52-80):

32. Այսինքն՝ ռազմական ու մարդական արվեստները:

23. **Գորնեաս** – ուսումնասիրողները գտնում են, որ սա Գառնի ամրոցն էր:

24. **Պրեֆեկտ** – բառացիորեն՝ պետ: Դատական, վարչական ու զինվորական պաշտոն, ինչպես նաև այդ պաշտոնը կրող անձնավորություն, վաղ կայսրության

*շրջանում՝ պրովինցիաների պրետորների օգնական, կամ առանձին պրեֆեկտու-րաների (վարչական միավոր) կառավարիչ:*

*25.* ***Ցենտուրիոն*** *– զինվորական աստիճան, հարյուրապետ:*

*26.* ***Պրինցեպս*** *– բառացիորեն՝ «(ծերակույտի) ավագ»: Այսպես էին կոչվում Ք. հ. I-III դդ. հռոմեական կայսրերը, ընդգծելով իրենց ձգտումը՝ պահպանել հանրապետական կարգերը գեթ արտաքնապես:*

*27. Հռադամիզդը Փարսման I-ի և նրա երկրորդ կնոջ՝ Դաղանա թագուհու որդին էր, փեսան էր իր հորեղբոր՝ Հայաստանի թագավոր Միհրդատի, որի Զենոբիա դստեր հետ էր ամուսնացած: Պալատական հեղաշրջում կազմակերպելով ու սպանելով Միհրդատին՝ 51 թ. Կապադովկիայի կաշառված կուսակալ Պելիգնոսի կողմից Արտաշատում թագադրվել է Մեծ Հայքի թագավոր (51-54):*

*28. Տակիտոսը նկատի ունի այն հանգամանքը, որ, անիշխանության շրջանում, պարթև Արշակունիները ժամանակ առ ժամանակ գահ էին բարձրանում Հայաստանում:*

*29. Վաղարշն իր կրտսեր եղբայր Բակուրին նշանակել էր Ատրպատականի թագավոր, իսկ մյուս եղբորը՝ Տրդատին որոշել էր թագավորեցնել Հայաստանում: 52 թ. նա Տրդատին հռչակում է Հայաստանի թագավոր:*

*30.* ***Նրան*** *(ակինակ) – արևելյան կարճ և ուղիղ դաշույն:*

*31. Զենոբիան միաժամանակ ապրում էր Տրդատի արքունիքում, որտեղ էլ ծննդաբերեց ու արու զավակ ունեցավ. սա հետագայում թագավորեց Իբերիայում իբրև Փարսման II (100-114):*

ԲԱԺԻՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

## ԿՈՐԲՈՒԼՈՆԻ ԲԱՆԱԿԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԸՍՏ ԳԱՅՈՍ ԿՈՌՆԵԼԻՈՍ ՏԱԿԻՏՈՍԻ

### *ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### *Գիրք տասներեքերորդ*

***Գլուխ 6.*** *Տարվա[1] վերջում անհանգիստ լուրեր են տարածվում, որ պարթևները նորից ներխուժել և հափշտակում են Հայաստանը, դուրս քշելով Ռադամիստին, որը հաճախ է տիրացած այդ թագավորությանը և ապա փախստական դարձած, որ այժմ նա նույնիսկ պատերազմից հրաժարվում է ...։*

***Գլուխ 7.*** *Այս ու նման լուրեր էին տարածում ժողովրդի մեջ. Ներոնը հրամայում է Արևելքի լեգեոնները լրացնելու համար մերձակա պրովինցիաներում ժողոված երիտասարդությունը մոտեցնել և տեղավորել Հայաստանի սահմանների մոտ, իսկ երկու հին թագավորների՝ Ագրիպպային[2] ու Անտիոքոսին[3] ռազմի համար զորքեր նախապատրաստել, որոնցով պիտի ներխուժեին պարթևական սահմանները։ Միաժամանակ կարգադրում է Եփրատ գետի վրա կամուրջներ գցել։ Եվ Փոքր Հայքը հանձնում է Արիստոբուլոսին[4], իսկ Սոփենեի թագավորությունը (Ծոփաց երկիրը)՝ Սոհեմին[5], երկուսին էլ տալով թագավորական նշաններ։ Հենց այդ ժամանակ Վոլոգեսի[6] դեմ առաջ եկավ նրա որդի Վարդանն իբրև ախոյան. պարթևները հեռացան Հայաստանից, կարծես թե պատերազմը հետաձգում էին։*

***Գլուխ 8.*** *Սակայն ծերակույտում ... ուրախանում էին, որ Հայաստանը պահելու համար (Ներոնը) նշանակել էր Դոմիտիոս Կորբուլոնին[7] և թվում էր, թե առաքինությունների համար ասպարեզ է բացված։ Արևելքի զորքերն այնպես էին բաժանված, որ օժանդակ զորքերի մի մասն և երկու լեգեոն մնում էին Սիրիա պրովինցիայում,*

*լեգատ Ումմիդիոս Կվադրատոսի*[8] *ղեկավարությամբ, իսկ հռոմեական և դաշնակից նույնքանակ զորքը՝ Կորբուլոնի հրամանատարության տակ, որին պիտի ավելանան Կապադովկիայում ձմեռող կոհորտներն ու հեծելազորերը:*

***Գլուխ 34.*** *... Թեպետև Հայաստանին տիրելու համար պարթևների և հռոմեացիների միջև եղած պատերազմը մինչ այժմ դանդաղ էր ընթանում, այս տարվա սկզբում սուր բնույթ ընդունեց, որովհետև Վոլոգեսը թույլ չէր տալիս, որ իր եղբայր Տիրիդատը հեռացվի այն թագավորությունից*[9]*, որն ինքն էր տվել նրան, կամ թե ուրիշ պետությունից ընդունի այն իբրև նվեր. իսկ Կորբուլոնն էլ հռոմեական ժողովրդի մեծությանն արժանի էր համարում, որ Լուկուլլոսի և Պոմպեոսի երբեմնի նվաճած երկիրը հետ ստացվի: Ընդսմին հայերն էլ երկկողմանի հավատարմության հետևանքով հրավիրում էին թե՛ մեկ և թե՛ մյուս կողմի զորքերին: Հայերը տեղադրությամբ և բարքերի նմանությամբ պարթևներին ավելի մոտ էին կանգնած և խառնված էին նրանց հետ ամուսնություններով:*

***Գլուխ 37.*** *Եվ Տիրիդատը, բացի իր սեփական կողմնակիցներից, օգնություն ստանալով իր եղբայր Վոլոգեսից, արդեն ոչ թե գաղտագողի, այլ բացահայտ թշնամական գործողություններ սկսեց Հայաստանի դեմ: Նա ավերում էր նրանց, ում մեզ հավատարիմ էր համարում, իսկ եթե նրա դեմ զորք էր դուրս բերվում, նա խույս էր տալիս և, թռնելով մեկ այստեղ, մեկ այնտեղ, ավելի շատ ահաբեկում էր համբավով, քան պատերազմով: Այդպիսով Կորբուլոնն իզուր էր երկար ժամանակ ձգտում մարտի բռնվել և ստիպված էր թշնամիների օրինակով պատերազմը շրջանցել: Նա բաժանում է իր ուժերը, որպեսզի լեգատներն ու պրեֆեկտները տարբեր տեղերում հավասարապես ներխուժեն: Միաժամանակ նա խորհուրդ է տալիս Անտիոքոս թագավորին՝ հարձակվել իրեն մերձակա շրջանների վրա: Փարասմանը, սպանելով իր որդի Ռադամիստին իբրև դավաճանի, որպեսզի դրանով վկայվի նրա հավատարմությունը դեպի մեզ, հայերի վրա ավելի եռանդուն կերպով էր թափում իր հին ատելությունը: Եվ հենց այդ ժամանակ առաջին անգամ մեր կողմը գրավված մոսքերը*[10] *հարձակվեցին Հայաստանի հեռավոր վայրերի վրա: Այս ցեղն ուրիշներից ավելի հավատարիմ էր հռոմեացիներին: Այդպիսով Տիրիդատի մտադրությունները հակառակ հետևանքներ տվին: Տիրիդատն ուղարկում էր պատգամավորներ, որոնք թե՛ Տիրիդատի և թե՛ պարթևների անունից պիտի բացատրություն պահանջեին, թե ինչո՞ւ, երբ նոր են տրվել պատանդներ և վերանորոգված է բարեկա-*

մությունը, որը տեղ է բացում նոր բարի գործերի համար, ինքը Տիրիդատը պիտի վտարվի Հայաստանի իր հին տիրապետությունից: Վոլոգեսը դեռևս տեղից չի շարժվել այն պատճառով, որ գերադասում է բանակցել, քան բռնի ուժով գործել. իսկ եթե հռոմեացիները պիտի պնդեն պատերազմի վրա, Արշակունիներին չի պակասի ո՛չ արիություն, ո՛չ էլ բախտը, որը հռոմեացիներն արդեն շատ հաճախ փորձել են կրած պարտություններում: Դրան ի պատասխան Կորբուլոնը, որին հաստատապես հայտնի դարձավ, որ Վոլոգեսը հապաղում է Հիրկանիայի անջատման պատճառով[11], խորհուրդ է տալիս Տիրիդատին՝ գնալ խնդրել կայսրին. նա կարող է կայսրից ստանալ հաստատուն թագավորություն և խույս տալ արյունահեղությունից, եթե, թողնելով հեռավոր ու տարաժամ հույսը, հետամուտ լինի առկային և ավելի լավին:

**Գլուխ 39.** Թագավորը (Տիրիդատը), որովհետև միաժամանակ մեր զորքերը չափազանց շատ տեղեր էին արշավում, հապճեպ հեռացավ՝ կամ նենգություն կասկածեց, կամ թե Պոնտական (Սև) ծովի ու Տրապեզունտ քաղաքի վրայով դեպի մեզ եկող պաշարեղենի փոխադրամիջոցները գրավելու նպատակ ուներ: Սակայն նա չկարողացավ բռնություն գործ դնել մեր փոխադրամիջոցների վրա, որովհետև դրանք շարժվում էին պահակախմբով պաշտպանված լեռներով. իսկ Կորբուլոնը, որպեսզի պատերազմն անհետևանք չձգձգվի և հայերին ստիպի պաշտպանել իրենց գույքը, մտադրվում է քանդել ամրությունները: Նա իր վրա է վերցնում Վոլանդ[12] կոչված ամրությունը, որն ամենաուժեղն էր այդ շրջանում, իսկ փոքր ամրությունները հանձնում է լեգատ Կոռնելիոս Ֆլակկոսին ու ճամբարների պրեֆեկտ՝ Ինստեոս Կապիտոնին: Երեք ամրություններ մի օրում վերցնելուց հետո, մնացածներն անձնատուր եղան մասամբ ահից, մասամբ էլ բնակիչների ցանկությամբ:

**Գլուխ 40.** Այստեղից առաջ է գալիս այն համոզումը, որ պետք է հարձակվել հայկական ցեղի մայրաքաղաք՝ Արտաքսատայի (Արտաշատի) վրա: Սակայն լեգեոնները տարվում են ոչ ամենամոտ ճանապարհով, որովհետև, եթե լեգեոնները փոխադրվեին Արտաքսատայի պարիսպները ողողող Արաքս գետի վրա եղած կամրջով[13], հարվածի տակ կընկնեին. նրանք անցան հեռու տեղից[14] ու ավելի լայն ծանծաղուտներով: Իսկ Տիրիդատն ամոթի ազդեցության տակ, ու վախենալով, որ, եթե հնարավորություն տա թշնամուն պաշարելու, կպարզվի իր անզորությունը, իսկ եթե դիմադրի, իրեն ու հեծելազորային ուժերը կկաշկանդի անհարմար տեղերում, որոշեց վերջա-

*պես իր մարտական շարքերն ի ցույց դնել ու որոշ օր մարտը սկսել կամ թե փախուստ ձևացնելով՝ դարան նախապատրաստել: Այդպիսով նա հանկարծ ցրված ուժերով շրջապատում է ընթացքի մեջ գտնվող հռոմեական զորքը, ընդ որում, մեր առաջնորդն անտեղյակ չէր և զորքը տեղավորել էր այնպես, որ նա հավասարապես ունակ լինի թե՛ ընթանալու և թե՛ մարտի բռնվելու: Տիրիդատը զանազան կողմերից էր արշավում, բայց այնքան չէր մոտենում, որ նիզակի հարվածը հասնի, մե՛րթ սպառնում էր, մե՛րթ ահաբեկված էր ձևանում, փորձելով, արդյոք չի՞ կարող մեր շարքերը կտրել ու անջատ-անջատ հարձակվել: Երբ ոչ մի պատահական անջատում մեր շարքերի մեջ տեղի չունեցավ, այլ միայն հեծելազորի մի դեկուրիոն (տասնապետ), ավելի խիզախ առաջ ընկած լինելով, նետահար եղավ և այդ օրինակը մնացածների հնազանդությունն ամրապնդեց, Տիրիդատը հեռացավ, երբ մութն ընկնելու վրա էր:*

***Գլուխ 41.*** *Եվ Կորբուլոնն այդ տեղում բանակեց և մտածում էր, արդյո՞ք գիշերը չպետի գնա Արտաքսատայի վրա ու պաշարի այն. նա կարծում էր, որ Տիրիդատն այնտեղ է նահանջել: Հետո, երբ հետախույզները հաղորդեցին, որ թագավորը երկար ճանապարհ է բռնել և հայտնի չէ, թե ուր է գնում՝ մեդերի՞ թե ալբանների մոտ, Կորբուլոնը սպասում է լույսին: Թեթև զինված զորքը առաջ ուղարկվեց, որպեսզի այդ միջոցին շրջապատեն Արտաքսատայի պարիսպներն և հեռվից սկսեն պաշարումը: Բայց քաղաքացիներն իրենց կամքով բաց արին դարպասները, անձնատուր եղան և իրենց գույքը հանձնեցին հռոմեացիներին: Այդ նրանց փրկություն չբերեց. Արտաքսատան հրդեհվեց, քարուքանդ արվեց և հավասարեցվեց հողին, որովհետև պարիսպների լայնածավալության պատճառով առանց ուժեղ պահակազորի չէր կարելի պահել այն, ոչ էլ մենք այնքան ուժ ունեինք, որ զորքը բաժանվեր թե՛ պահակազորն ուժեղացնելու և թե՛ պատերազմը վարելու համար, իսկ եթե մայրաքաղաքն անվթար մնար և առանց պահակազորի, ոչ մի օգուտ և փառք չկար նրանից, որ քաղաքն առնված է[15]:*

*Այդ հաղթության պատճառով Ներոնը բարձրաձայն ողջունվում է իբրև իմպերատոր, ծերակույտի որոշմամբ մաղթանք է կատարվում. որոշվում է պրինցեպսի համար արձաններ դնել, հաղթակամարներ կառուցել և տալ շարունակական կոնսուլություններ, որոշվում է, որ տոնական հայտարարվեն թե՛ տարած հաղթանակի, թե՛ այդ մասին հայտարարելու և զեկուցելու օրերը, ինչպես նաև ընդունվում են այլ նման ձևի որոշումներ…*

*1. Այսինքն՝ 54 թվականի վերջերին:*

*2. Ագրիպպան Ասորիքում գտնվող Խալկիդիկե (Քաղկիդիկե) փոքրիկ պետության և Հյուսիսային Պաղեստինի թագավոր Հերովդես Ագրիպպա II կրտսերն է (53-100)՝ Հրեաստանի թագավոր Հերովդես I Մեծի ծոռը:*

*3. Սա Կոմմագենեի Անտիոքոս IV Էպիփանես թագավորն է (38-72):*

*4. Արիստոբուլոսը Խալկիդիկեի թագավոր Ագրիպպա II-ի կրտսեր որդին է: 54 թ. Արիստոբուլոսը Ներոնի կողմից նշանակվում է Փոքր Հայքի թագավոր:*

*5. Սա Ծոփքի թագավոր Սոհեմոսն է: 55 թ. Ներոնը Ծոփքը անջատելով Մեծ Հայքից՝ այստեղ թագավոր է հռչակում Սոհեմոսին (55-63), որը Ծոփաց արքայական տան շառավիղն էր և Ասորիքում գտնվող Էմեսա (Հոմս) փոքրիկ թագավորության գահակալը:*

*6. Խոսքը պարթևական թագավոր Վաղարշ I-ի մասին է:*

*7. **Գնեոս Դոմիտիոս Կորբուլոն** - հռոմեական հայտնի զորավար և քաղաքական գործիչ: 55 թ. նշանակվել է Կապադովկիայի կուսակալ, լեգատ և արևելքում հռոմեական ու «դաշնակից» պետությունների զորքերի գերագույն հրամանատար:*

*8. **Գայոս Ումմիդիոս Կվադրատոս** - Սիրիա պրովինցիայի կուսակալ, լեգատ:*

*9. Հայկական գահի հավակնորդ Տրդատ Արշակունին, Հռադամիզդի երկրորդ փախուստից հետո, 55 թ. նորից մտել էր Հայաստան:*

*10. **Մոսքեր** (մեսխեր) - քարթվելական ցեղ, որը 37 թ. պայմանագրով Հայաստանից Իբերիա-Վիրքին անցած Գողերձական երկրի հիմնական ազգաբնակչությունն էր:*

*11. Այդ ժամանակ Վրկանից երկիրը նորից ապստամբական վիճակում էր:*

*12. **Վոլանդ** - ամրոց Հայկական պար լեռնաշղթայի Գայլատու (Կուջաղ) լեռնանցքում, Արտաշատից ոչ հեռու՝ դեպի արևմուտք:*

*13. Խոսքը այժմյան Խոր - վիրապի մոտ գտնվող Տափերական կամուրջի մասին է:*

*14. Հռոմեական բանակն Արաքսն անցել է Վարդանակերտ ավանի գետանցքով՝ այժմյան Մարգարայի կամրջի մոտ:*

*15. Կորբուլոնը Արտաշատը գրավեց 58 թ. կեսերին և 58-59 թթ. ձմեռը անցկացրեց այնտեղ: 59 թ. գարնանը, Արտաշատից դուրս գալուց առաջ, Կորբուլոնի հրահանգով Հայոց մայրաքաղաքը հիմնովին ավերվեց:*

## ԿՈՐԲՈՒԼՈՆԻ ԲԱՆԱԿԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԴԵՊԻ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ ԵՎ ՆԱՀԱՆՋԸ ԸՍՏ ԳԱՅՈՍ ԿՈՌՆԵԼԻՈՍ ՏԱԿԻՏՈՍԻ

### *ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

## *Գիրք տասնչորսերորդ*

***Գլուխ 23.*** *Եվ Կորբուլոնն Արտաքսատան քանդելուց հետո[1], կարծում էր, որ պետք է օգտվել նոր ներշնչված ահից՝ Տիգրանակերտը գրավելու համար: Այս քաղաքը քանդելուց հետո պետք է խորացնել թշնամիներին ազդած ահը...:*

***Գլուխ 24.*** *Ինքն ու զորքը մարտում ոչ մի վնաս չկրեցին. բայց այդ պայմաններում շատ էին նեղվում թե՛ պաշարի պակասությունից և թե՛ լարվածությունից, ստիպված էին քաղցը (լոկ) կենդանիների մսով հագեցնել. սրան ավելացրած՝ ջրի պակասությունը, կիզիչ ամառը. երկար ճանապարհների դժվարությունները մեղմվում էին միայն առաջնորդի համբերատարությամբ, որը տանում էր նույնն ու ավելին, քան շարքային զինվորը: Այնտեղից գալիս են մշակված վայրեր[2], որտեղ ցանքսերը հնձված էին, և երկու ամրոցներից[3], ուր փախել էին հայերը, մեկը գրոհով վերցրին. որոնք որ առաջինը գրոհը հետ էին մղում, պաշարումով հաղթվեցին: Կորբուլոնն այնտեղից անցավ Տավրավնիտների (տարոնցիների) շրջանը: Փոքր-ինչ հետո, Տիգրանակերտից ուղարկված պատգամավորները հայտնում են, որ քաղաքի պարիսպները բաց են և քաղաքացիները սպասում են հրամանի, ու միաժամանակ հանձնում են ոսկե պսակ՝ իբրև նվեր հյուրին: Կորբուլոնն ընդունեց նրանց պատվով. և քաղաքից ոչինչ չհափշտակվեց, որպեսզի չթալանված ժողովուրդն ավելի պատրաստ լինի հնազանդության:*

***Գլուխ 26.*** *Տիրիդատը Մեդիայի վրայով մտավ Հայաստանի ծայրագավառները: Կորբուլոնը նախ ուղարկեց լեգատ Վերուլանոսին օժանդակ զորքով, հետո ինքն անձամբ շարժեց լեգեոնները և խսկապես ստիպեց նրան (Տիրիդատին) հեռանալ և թողնել պատերազմելու հույսը. որոնց որ Կորբուլոնը ճանաչում էր իբրև մեզ հակառակորդ, սպանություններով և հրդեհներով ավերում էր. և ձեռք էր բերում Հայաստանի տիրապետությունը, երբ եկավ Տիգրանը[4], որն ընտրված էր Ներոնի կողմից Հայաստանին տիրապետելու համար: Այդ Տիգրանը կապադովկների ավագանուց էր, Արքելաոս[5] թագավորի ծոռն էր, բայց որովհետև երկար ժամանակ Հռոմում պատանդ էր եղել, իջել էր մինչև ստրկական համբերությունը: Նա ընդունվեց ոչ բոլորի համաձայնությամբ, քանի որ մի քանիսների մոտ համակրանքը դեպի Արշակունիները դեռ չարունակվում էր. սակայն մեծամասնությունը, խիստ ատելով պարթևների գոռոզությունը, շատ էր ցան-*

կանում ունենալ Հռոմից տրված Թագավոր: Նրան (Տիգրանին) տվին պահակազոր՝ բաղկացած հազար լեգեոնարներից, երեք դաշնակից կոհորտներից և հեծելազորային երկու ջոկատից, և, որպեսզի ավելի հեշտ լինի նոր Թագավորությունը պահպանել, Հայաստանի որոշ մասերը, նայած Թե ում էին սահմանակից, հրաման ստացան հնազանդվել Փարասմանին, Պոլեմոնին, Արիստոբուլոսին և Անտիոքոսին[6]: Կորբուլոնը հեռացավ Սիրիա, որը լեգատ Ումմիդիոսի մահից հետո Թափուր էր մնացել և տրվել իրեն՝ Կորբուլոնին:

## Գիրք տասնհինգերորդ

**Գլուխ 1.** Այդ ժամանակամիջոցին պարԹևների Վոլոգես Թագավորը, իմանալով Կորբուլոնի հաջողությունների մասին և, Թե Հայաստանում գահ է բարձրացված օտար ծագում ունեցող Տիգրանը, Թե միաժամանակ իր եղբայր Տիրիդատն արտաքսված է, Արշակունիների արժանապատվությունն արհամարհված է, ցանկանում է գնալ վրեժխնդիր լինել: Մյուս կողմից նկատի ունենալով Հռոմի մեծությունն ու շարունակվող դաշինքը, լինելով դանդաղկոտ բնավորության տեր և գտնվելով Հիրկանիայի[7] (Վրկանիայի) անջատման ազդեցության տակ, Հիրկանիայի, որը պատկանում է ուժեղ ժողովրդին, և գիտակցելով, որ այդ անջատման պատճառով ինքը կապված էր մի շարք պատերազմներով, Վոլոգեսը գալիս էր հակառակ խոհերի: Բայց, մինչդեռ նա տատանման մեջ էր, ավելացավ վիրավորանք բերող նոր լուրը, որը խԹանեց նրան. և իսկապես, դուրս գալով Հայաստանից, Տիգրանն ավերել էր Ադիաբենը՝[8] սահմանակից երկիրը, ավերվել էր ավելի լայն չափերով և ավելի երկարատև, քան այդ լինում է ավազակության ժամանակ. և այդ բանը դառնությամբ էին տանում ժողովուրդների առաջնորդները. նրանք գանգատվում էին, Թե արհամարհանքն այն աստիճանի է հասել, որ արշավում են ոչ Թե հռոմեացի առաջնորդների հրամանատարության տակ, այլ մի պատանդի հանդգնության շնորհիվ, որն այնքան տարիների շարունակ եղել է ստրկության մեջ: Նրանց կսկիծն ավելի էր բոցավառում Մոնոբազոսը (Մանավազը)[9], որն Ադիաբենի կառավարիչն էր, և շարունակ հարցնում էր, Թե ի՞նչ օգնություն խնդրի, ո՞ւր դիմի. եԹե արդեն զիջել են Հայաստանը, այժմ Թալանի են ենԹակա մերձակա երկրները. և եԹե պարԹևները չպիտի պաշտպանեն, ավելի տանելի կլինի հռոմեացիների մոտ ստրկության անձնատուր եղածների, քան գերի ընկածների համար: Գահազուրկ եղած Տիրիդատն ավելի ևս ծանր էր իր լռությամբ կամ զսպված տրտունջներով, ասելով, Թե ան-

*գործությամբ չէ, որ պահվում են մեծ պետությունները, այլ մարդկանց ու զենքի մրցակցությամբ: Մարդկանց բախտի գագաթնակետում այն է ավելի արդարը, ինչն ավելի ուժեղ է: Մասնավոր ընտանիքների գործն է՝ իրենը պահելը, իսկ ուրիշինը վեճի առարկա դարձնելը կազմում է թագավորների փառքը:*

***Գլուխ 2.*** *Այդպիսով, ազդվելով դրանից, Վոլոգեսը խորհրդակցություն է հրավիրում և իրեն ամենից ավելի մոտ նստեցնում է Տիրիդատին ու այդպես է սկսում իր ասելիքը. «Ես ու սա ծնված ենք միևնույն հորից, և, որովհետև, չնայած իր երիցությանը, նա զիջել է ինձ բարձրագույն իշխանությունը, ես նրան տվի Հայաստանի տիրապետությունը: Տիրիդատի տիրապետությունը մեր հզորության երրորդ աստիճանն է կազմում, որովհետև դրանից առաջ Պակորոսը (Բակուրը) տիրացել էր Մեդիային: Եվ թվում էր, թե հակառակ եղբայրների առաջվա ատելության ու մրցակցության, մեր ընտանիքի գործերը ես կանոնավոր կերպով կարգավորել էի: Հռոմեացիները խանգարում ու խախտում են խաղաղությունը, որը երբեք չեն խախտած իրենց համար հաջող կերպով, իսկ այժմ խախտել են իրենց ի կորուստ: Ես չեմ բացասում, որ ես միշտ ավելի ցանկացել եմ մեր պապերի նվաճածը պահել արդարությամբ՝ քան արյունով, իրավունքով՝ քան զենքով: Եթե դանդաղկոտությանս պատճառով բաց եմ թողել, կուղղեմ արիությամբ: Ձեր ուժն ու փառքն անսասան են մնացել, ավելացել է համեստության համբավը, որը չպիտի արհամարհվի մահկանացուներից ամենամեծերի կողմից և աստվածների կողմից էլ գնահատված է»: Միաժամանակ նա Տիրիդատի գլխին թագ դրեց, պատրաստի հեծելազորային գունդը, որն ըստ սովորության, ուղեկցում էր արքային, հանձնեց մեծատոհմիկ Մոնեսին, ավելացրեց ադիաբենացիների օժանդակ զորքը և հանձնարարեց դուրս վտարել Տիգրանին Հայաստանից, մինչդեռ ինքը, հաշտություն կապելով հիրկանների հետ, պետության խորքերից հավաքում է ուժեր և հսկայական ռազմամթերք ու սպառնում է հռոմեական պրովինցիաներին:*

***Գլուխ 3.*** *Երբ Կորբուլոնը հաստատ աղբյուրից իմանում է այդ մասին, Տիգրանին իբրև օժանդակություն ուղարկում է երկու լեգեոն Վերուլանոս Սևերոսի և Վետտիոս Բոլանոսի հետ, գաղտնի կարգադրությամբ՝ բոլոր գործերում լինել ավելի շրջահայաց, քան շտապող, քանի որ նա ավելի շատ ցանկանում է ունենալ պատերազմ, քան վարել այն. և գրել էր կայսրին[10], որ կարիք կա հատուկ հրամանատարի, որը պիտի պաշտպանի Հայաստանը, որ, եթե Վոլոգեսը Սիրիա ներխուժի, սուր վտանգի մեջ կընկնի այդ երկիրը:*

**Գլուխ 4.** Մինչդեռ այդ նախապատրաստվում էր Կորբուլոնի կողմից Սիրիայի պաշտպանության համար, Մոնեսը շտապ շարժում է զորքը, որպեսզի ավելի շուտ հասնի, քան լուրն իր մասին, ընդհարվում է Տիգրանի հետ, որն այնքան էլ անտեղյակ չէր և անակնկալի չէր եկած: Տիգրանը գրավել էր Տիգրանակերտ քաղաքը, որն ուժեղ էր թե՛ պաշտպանների չատությամբ և թե՛ պարիսպների մեծությամբ: Ընդսմին ոչ արհամարհելի լայնություն ունեցող Նիկեփորիում գետը[11] շրջապատում էր պարիսպների մի մասը, իսկ այնտեղ, որտեղ գետով չէր պաշտպանված, անց էր կացրած հսկա մի խրամ:

**Գլուխ 5.** Սակայն Կորբուլոնը, թեև գործերը հաջող էին գնում, կարծում է, որ պետք է չափավորություն պահպանել հաջողության համար, (բանագնացներ) է ուղարկում Վոլոգեսի մոտ, որպեսզի բացատրություն պահանջեն պրովինցիան ներխուժելու համար, թե ինչո՞ւ են պաշարում Հռոմի դաշնակից ու բարեկամ թագավորին և հռոմեական կոհորտները. ավելի լավ է, թող թողնի պաշարումը, թե չէ ինքը՝ Կորբուլոնը, նույնպես բանակ կդնի թշնամու երկրում: Այդ առաքելության մեջ ընտրված էր ցենտուրիոն Կասպերիոսը, որը Տիգրանակերտից երեսուն ու յոթ հազար ոտնաչափ[12] հեռավորության վրա գտնվող Նիսիբիս (Մծբին) քաղաքի[13] մոտ տեսնում է թագավորին ու խրոխտաբար հայտարարում է հանձնարարությունը: Վոլոգեսն ուներ հին և խորը թափանցած կանոն՝ խուսափել հռոմեական պատերազմից. ներկայումս էլ գործերը հաջող չեն ընթանում: Պաշարումն իզուր է. Տիգրանն ապահով է թե՛ զորքի և թե՛ պաշարի տեսակետից: Այդպիսով, Վոլոգեսը, խոր թաքցնելով վախն ու ծածկվելով մեղմությամբ, պատասխանում է, թե մտադիր է պատգամավորներ ուղարկել հռոմեական կայսեր մոտ թե՛ Հայաստանը պահանջելու և թե՛ խաղաղությունն ամրապնդելու համար: Վոլոգեսը հրամայում է Մոնեսին՝ թողնել Տիգրանակերտը, իսկ ինքը հետ է դառնում:

**Գլուխ 6.** Հռոմում շատ շատերն այդ բանակցությունները նկատում էին իբրև հետևանք թագավորի վախի և Կորբուլոնի սպառնալիքների ու գտնում էին հրաշալի: Մյուսները մեկնաբանում էին, թե կա գաղտնի համաձայնություն, որ երկու կողմից էլ պատերազմը դադարեցնում են, Վոլոգեսը հետ է քաշվում, իսկ Տիգրանը նույնպես Հայաստանից պիտի հեռանա: Իսկապես, ինչո՞ւ հռոմեական զորքը հեռացվեց Տիգրանակերտից. ինչո՞ւ խաղաղ ժամանակ թողին այն տեղը, որը պատերազմի ժամանակ պաշտպանում էին. մի՞թե ավելի լավ է ձմեռել Կապադովկիայի սահմաններում շտապ խփած վրաններում, քան թագավորության նոր պաշտպանած մայրաքաղաքում:

*Պատերազմն ուղղակի հատաձգված է, որպեսզի Վոլոգեսը պատերազմի ոչ թե Կորբուլոնի, այ ուրիշի հետ, իսկ Կորբուլոնն էլ՝ վտանգ չստեղծի այդքան տարիների ընթացքում իր ձեռք բերած փառքի համար: Զէ որ, ինչպես զեկուցեցի, Հայաստանը պաշտպանելու համար նա պահանջել էր հատուկ հրամանատար, լուր էր տարածվել, որ Կեսեննիոս Պետոսը[14] գալիս է: Արդեն եկավ. զորքերն այնպես բաժանված էին, որ չորրորդ և տասներկուերորդ լեգեոնները և Մեսիայից (Մյուսիայից)[15] նոր չարժած հինգերորդ լեգեոնը, ինչպես նաև պոնտական, գալատական և կապադովկիական օժանդակ ուժերը հնազանդվում էին Պետոսին:*

***Գլուխ 7.*** *Մոտավորապես հենց այդ ժամանակ Վոլոգեսի պատգամավորները, որոնց մասին հիշատակել էի, որ ուղարկվել են հռոմեական պրինցեպսի մոտ, վերադարձան ձեռնունայն, և պարթևները սկսեցին բացահայտ պատերազմ: Պետոսն էլ չհակառակվեց. նա մուտք է գործում Հայաստան՝ երկու լեգեոններով...*

***Գլուխ 8.*** *Սակայն Պետոսը... զորքը չտապ փոխադրում է Տավրոս լեռնաշղթայով՝ Տիգրանակերտը հետ վերցնելու համար, ինչպես ինքն էր ասում, և ավերելու այն շրջանները, որ Կորբուլոնը թողել էր անվթար: Եվ նա վերցրած մի քանի ամրություններն ու ձեռք բերած փոքր-ինչ փառքը և մի քիչ ավարը կպահեր, եթե փառքի հետ ունեցած լիներ նաև չափավորություն, իսկ ավարի հետ նաև հոգատարություն: Երկար անցումներով ու վազքով անցան այնպիսի տարածություն, որը չէր կարող պահել, և փչացնելով գրավված պաշարը, երբ ձմեռն արդեն վրա էր հասնում, (Պետոսը) զորքը տարավ և կայսեր անունով կազմեց մի նամակ, իբր թե պատերազմը վերջացած է: Նամակը լի էր փքուն բառերով, բայց անբովանդակ էր:*

*1. Կորբուլոնը Արտաշատից դուրս եկավ 59 թ. գարնանը:*

*2. Պատմագիրը նկատի ունի Հարքի և Տարոնի (Մշո դաշտ) բարեբեր հովիտները:*

*3. Հ. Մանանդյանը այս ամրոցները տեղադրում է Հայկական պար լեռնաշղթայի հարավկողմում՝ Տիգրանակերտ տանող ճանապարհի վրա և գտնում է, որ դրանք Բագավան և Ծումբ ամրություններն էին (տե՛ս «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հատ. Ա, Երևան, 1944, էջ 338):*

*4. Սա Մեծ Հայքի թագավոր Տիգրան VI-ն է (60-61): Տիգրանը Հրեաստանի թագավոր Հերովդես Մեծի թոռն էր, Հայոց թագավոր Տիգրան V-ի եղբոր՝ Ալեքսանդրի որդին:*

*5. Արքելաոսը Կապադովկիայի և Փոքր Հայքի թագավորն էր (36-17): Տիգրան VI-ի իգական գծով թոռն էր այս Արքելաոսի:*



*Ներոն*

*6. Հայաստանից անջատված այդ երկրամասերը տեղադրվում են նրա հյուսիս-արեւմտյան մասերում: Ուսումնասիրողները գտնում են, որ Մեծ Հայքից անջատված հողերից Պոնտոսի Պոլեմոն II թագավորը պետք է ստացած լիներ Ճորոխի վերին հոսանքում գտնվող Սպեր գավառը, Իբերիայի Փարսման I-ը՝ ամբողջ Գուգարքը, Փոքր Հայքի Արիստոբուլոս թագավորը՝ Ակիլիսինե-Եկեղյաց, Դարանաղի, Աղյուն և Մզուր գավառները, իսկ Կոմմագենեի Անտիոքոս IV թագավորը, հավանաբար, ստացել էր Կիլիկիայի արևելյան սահմանամերձ շրջաններից և մերձեփրատյան Առավենե գավառից որոշ տարածքներ: Մեծ Հայքի թագավորության տարածքի ջլատման ու փոքրացման սույն քաղաքականության հիմքում, ինչպես դժվար չէ եզրակացնել, ընկած էր Հռոմի ձգտումը՝ հայկական պետությունը դարձնել երկրորդական, երրորդական կարգի «դաշնակից» թագավորություն:*

*7. Հայկական աղբյուրների Վրկանից աշխարհն է: Տեղադրվում է Կասպից ծովի հարավ և հարավարևելյան մասում՝ ներկայիս Գիլանի նահանգի տեղում:*

*8. Ադիաբենե երկիրը գտնվում էր Տիգրիսի միջին հոսանքի շուրջն ընկած տարածքում և ընդգրկում էր պատմական բուն Ասորեստանի մեծ մասը: Նրա մայրաքաղաքն էր Արբելան: Ըստ Ստրաբոնի մի վկայության, Ադիաբենեում կար հոծ հայկական բնակչություն (տե՛ս* ***Ստրաբոն****, XVI, 1, 19):*

*9.* ***Մոնոբազոս*** *– Ադիաբենեի Մոնոբազոս (Մանավազ) II թագավորն էր:*

*10. Խոսքը Հռոմի կայսր Ներոնի (54–68) մասին է:*

*11.* ***Նիկեփորիում*** *(Նիկեփորիոն) – Տիգրիսի վերին հոսանքի ձախակողմյան վտակներից մեկն է՝ ներկայիս Ֆարկին-սու գետակը: Հենց այս գետակի ափին՝ Աղձնիքի Նփրկերտ գավառում էր գտնվում Տիգրանակերտ մայրաքաղաքը:*

*12. Այսինքն՝ շուրջ 60 կիլոմետր հեռավորության վրա:*

*13. Քաղաք Հյուսիսային Միջագետքում:*

*14.* ***Լուկիոս Կեսեննիոս Պետոս*** *– հռոմեական քաղաքական ու ռազմական գործիչ, Ներոնի ամենամտերիմ անձնավորություններից մեկը: 61 թ. Հռոմի կոնսուլ: Նույն թվականի վերջերին նշանակվել է արևելքում հռոմեական բա-*

*նակի գերագույն հրամանատար:*

*15. **Մեսիա** – հռոմեական պրովինցիա Դանուբի ստորին հոսանքի շուրջն ընկած տարածքում:*

## ԳԱՅՈՍ ԿՈՌՆԵԼԻՈՍ ՏԱԿԻՏՈՍԸ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԶՈՐՔԵՐԻ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՀՌԱՆԴԵԱՅԻ ԴԱՇՆԱԳՐԻ ՄԱՍԻՆ

### *ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### ***Գիրք տասնհինգերորդ***

***Գլուխ 13.*** *...Զորքի այդ հուսահատական դրության[1] ազդեցության տակ՝ հրամանատարն[2] առաջին նամակն է գրում Վոլոգեսին, ոչ աղերսական, այլ գանգատի ձևով կազմած. գանգատվում էր, թե Վոլոգեսը թշնամություն է անում հայերի պատճառով, որոնք միշտ կամ Հռոմի իշխանության տակ են, կամ ենթակա են կայսեր կողմից ընտրված թագավորին, թե խաղաղությունը հավասարապես երկուսին էլ օգտավետ է, թե միայն ներկան չէ, որ պետք է ուշադրության առնել, թե ինքը՝ Վոլոգեսը, երկու լեգեոնների դեմ եկել է ամբողջ թագավորության ուժերով, այնինչ հռոմեացիների մոտ պատերազմին օգնելու համար մնում է մի ամբողջ աշխարհ:*

***Գլուխ 14.*** *Դրան Վոլոգեսն ըստ էության ոչինչ չպատասխանեց, այլ գրեց, որ ինքը պետք է սպասի իր եղբայրներ Պակորոսին և Տիրիդատին. որոշեց տեղն ու ժամանակը այն խորհրդակցության, ուր պիտի որոշվի Հայաստանի բախտը: Աստվածներն ավելացրին Արշակունիներին արժանի մի կետ՝ միաժամանակ պետք է որոշում ընդունել նաև հռոմեական լեգեոնների մասին: Դրանից հետո Պետոսի կողմից պատգամավորներ ուղարկվեցին՝ խնդրելու թագավորից[3], որ բանակցություն տեղի ունենա. Վոլոգեսը հրամայում է գնալ հեծելազորի պետ Վասակին[4]: Այդ ժամանակ Պետոսը հիշատակում է Լուկուլլոսին, Պոմպեոսին և այն, ինչ արել են կայսրերը Հայաստանին տիրելու և այդ երկիրը պարգևելու համար, իսկ Վասակը մատնանշում է, թե Հայաստանը պահելու կամ պարգևելու միայն պատրանքն է մեզ (հռոմեացիների) մոտ, իսկ իրական ուժը պարթևների ձեռքումն է: Փոխադարձ երկար քննարկումից հետո, հետևյալ օրը նրանց միանում է ադիաբենցի Մոնոբազոսը՝[5] իբրև վկա կնքվելիք պայմանագրի: Որոշվում է, որ լեգեոնները պաշարված դրությունից պիտի ազատ-*

*վեն, որ ամբողջ հռոմեական զորաբանակը պիտի թողնի Հայաստանի սահմանները, որ ամրությունններն ու պաշարեղենը պիտի հանձնվեն պարթևներին. որոշվում է՝ այդ բոլորը կատարելուց հետո Վոլոգեսին տալ հնարավորություն՝ պատգամավորներ ուղարկելու Ներոնի մոտ:*

***Գլուխ 15.** Այդ ժամանակամիջոցում Արսանիաս (Արածանի) գետի[6] վրա, որը ճամբարի առջևից էր հոսում, կամուրջ գցվեց այն պատրվակով, թե իբր այդ կամուրջն իրեն պիտի ճանապարհ ծառայի, սակայն պարթևներն իբր ապացույց տարած հաղթության՝ կամուրջն իրենց իշխանության տակ առան: Եվ իսկապես այդ կամուրջը նրանց պետք եղավ, իսկ մերոնք գնացին հակառակ ուղղությամբ: Դրան լուր ավելացավ, թե լեգեոններն անց են կացրել լծի տակով[7], և պատմում էին այլ անհաջողություններ, որոնց նման բան հայերի կողմից ի կատար էր ածվել: Հռոմեական զորքի հեռանալուց առաջ թշնամիները մտան ճամբարի ամրությունները, շրջապատեցին ճանապարհները. նրանք ճանաչում էին մի ժամանակ հռոմեացիների կողմից գերի վերցրած իրենց ստրուկներին և գրաստն ու հետ էին խլում. հափշտակում էին անգամ հագուստեղենը, պահած զենքերը. վախեցած զինվորը զիջում էր, որպեսզի մարտի ոչ մի առիթ չծագի: Վոլոգեսը սպանվածների զենքերից և մարմիններից կույտեր էր դիզել, որպեսզի դրանով վկայվի մեր պարտությունը:*

***Գլուխ 16.** ... Կորբուլոնն էլ հայտարարեց..., որ ինքը գտնվում է ոչ ավելի, քան երեքօրյա ճանապարհի հեռավորության վրա: Նա ավելացնում է, որ Պետոսը դրոշակների առաջ, այն մարդկանց ներկայությամբ, որոնց թագավորն ուղարկել էր վկա լինելու, երդումով ապահովում էր, որ հռոմեացիներից ոչ ոք մուտք չի գործի Հայաստան առաջ, քան կստացվի Ներոնի նամակն այն մասին, թե համաձայա՞ն է արդյոք խաղաղության: Եթե այդ հնարված է նրա (Պետոսի) սնափառությունը խորացնելու համար, ապա մնացածը ծածկված չէ խավարով՝ Պետոսը մի օրում կտրել անցել է քառասուն հազար քայլ (40 մղոն)[8] տարածություն, տեղ-տեղ ձգելով վիրավորներին, և նրա այդ չտապ փախուստը ոչ պակաս խայտառակ է, քան եթե նա մարտում թիկունք ցույց տված լիներ:*

***Գլուխ 17.** ... Դրանից հետո Պետոսը ձմեռեց Կապադովկիայում: Վոլոգեսն ուղարկեց Կորբուլոնի մոտ սուրհանդակներ, որպեսզի Կորբուլոնը քանդի անդրեփրատյան ամրությունները, և գետը, ինչպես մի ժամանակ էր, լինի սահմանագիծ. Կորբուլոնն էլ պահանջում էր, որ թագավորը, զանազան պահակախմբերը հեռացնելով, դատարկի*

Հայաստանը: Եվ վերջապես թագավորը զիջեց. Կորբուլոնի կառուցած անդրեփրատյան ամրությունները քանդվեցին, Հայաստանն էլ մնաց առանց միջնորդ իշխանավորի:

**Գլուխ 24.** Այդ դեպքերի ընթացքում, գարնան սկզբին եկան պարթևների պատգամավորները և բերին թագավորի հետևյալ ձևի հանձնարարություններն ու նամակը: Այժմ նա (Վոլոգեսը) թողնում է այն վեճը, որն առաջ և քանի-քանի անգամ ծագել էր Հայաստանին տիրապետելու մասին, որովհետև աստվածները, որոնք կարգադրիչներ են նույնիսկ կարող ժողովուրդների, Հայաստանի տիրապետությունը տվել են պարթևներին՝ ոչ առանց խայտառակության հռոմեացիների համար: Նորերս շրջափակված էր Տիգրանը[9], հետո՝ Պետոսն ու լեգեոնները, թեպետ կարող էր նրանց ճզմել, բայց անվնաս բաց է թողել. պարթևների ուժը բավականին փորձված է, տրված է նաև չափավորության ապացույցը: Եվ Տիրիդատը մտադիր չէ թագավորական թագն ընդունելու համար հրաժարվել Հռոմ գնալուց, եթե չպահեին քրմության պարտականությունները. նա կգնա հռոմեական դրոշակների և պրինցեպսի[10] արձանի մոտ, այնտեղ լեգեոնների առաջ նա սրբագործությունների[11] միջոցով կստանա թագավորությունը:

**Գլուխ 25.** Որովհետև Վոլոգեսի նամակն ուներ այդպիսի բովանդակություն, իսկ Պետոսը գրել էր ուրիշ բան, իբր թե գործերն անվթար են, հարցրին դեսպանների հետ եկած ցենտուրիոնին, թե ի՞նչ վիճակում է Հայաստանը: Նա էլ պատասխանեց, որ այնտեղից բոլոր հռոմեացիները դուրս են եկել: Այդ ժամանակ հասկանալով բարբարոսների ծաղրը, որոնք պահանջում էին այն, ինչ խլած ունեին, Ներոնը խորհրդակցություն ունեցավ պետության ամենաականավոր մարդկանց հետ, թե ի՞նչ են գերադասում՝ պատերազմ անհայտ ելքով, թե անպատիվ խաղաղություն: Պատերազմի մասին ոչ մի տատանում չկար: Եվ Կորբուլոնը նշանակվում է այդ գործը վարելու համար...: Այդպիսով պատգամավորները ձեռնունայն հետ են ուղարկվում, սակայն տրվում են նվերներ, որպեսզի Տիրիդատը, եթե անգամ խնդրելիս լինի (**Հայաստանի թագը – Պ. Հ.**), չզրկվի նույնը խնդրելու ոչ ապարդյուն հույսից:

**Գլուխ 26.** Կորբուլոնը... Հայաստան տարավ վեցերորդ և երրորդ լեգեոնները, որոնց զինվորական կազմը մնացել էր անվթար և վարժված էր հաճախակի ու հաջող ռազմական գործողությունների մեջ. նա ավելացրեց հինգերորդ լեգեոնը, ... նաև տասնհինգերորդականների (այսինքն՝ **տասնհինգերորդ լեգեոնի զինվորներին – Պ. Հ.**),

*որոնք նոր էին բերված, ավելացրեց նաև ընտիր ջոկատներ Իլլիրիայից[12] և Եգիպտոսից և եղած բոլոր հեծելազորային և հետևակ ջոկատներն ու թագավորների օժանդակ զորքերը, որ ի մի էր հավաքել Կորբուլոնը Մելիտենեի[18] մոտ. այդտեղից նա պատրաստվում էր անցնել Եփրատը:*

***Գլուխ 27.*** *Հետո նա (**Կորբուլոնը – Պ. Հ.**) գնում է այն ճանապարհով, որով մի ժամանակ մտել էր Հայաստան Լուկիոս Լուկուլլոսը, ազատելով այն երկար ժամանակի հետևանքով առաջացած արգելքներից: Տիրիդատից և Վոլոգեսից եկած խաղաղության պատգամավորներին նա չարհամարհեց, նրանց ավելացրեց ցենտուրիոններ, տալով վերջիններին ոչ անմեղ բնույթի հանձնարարականներ, քանի որ մինչև այժմ գործերն այնպես չեն գնացել, որ կարիք լինի ծայրահեղ կռվի: Շատ բան է հաջողվել հռոմեացիներին, մի քանի հաջողություններ ունեցել են նաև պարթևները, թող այդ ծառայի իբրև խրատ գոռոզության դեմ: Արդ՝ Տիրիդատին օգտավետ է ավերածություններից զերծ մնացած թագավորությունն ընդունել իբրև նվեր, իսկ Վոլոգեսի համար ավելի լավ է հոգալ պարթևական ժողովրդի օգուտը, դաշնակցելով հռոմեացիներին, քան փոխադարձաբար կորուստներ պատճառել իրար:*

***Գլուխ 28.*** *... Տիրիդատը պահանջում է նշանակել բանակցության օրն ու տեղը: Բարբարոսներն ընտրեցին ամենամոտ ժամանակը և այն տեղը, որտեղ նորերս պաշարված էին Պետոսի լեգեոնները, որովհետև այդ վայրը[14] ուրախ հիշողություններ էր առաջացնում նրանց մեջ: Կորբուլոնն էլ չխուսափեց դրանից, որպեսզի բախտի տարբերությունն է՛լ ավելի բարձրացնի իր փառքը: Պետոսի խայտառակությունն անհանգստություն չէր պատճառում Կորբուլոնին. այդ ավելի ևս ակնբախ դարձավ նրանով, որ Պետոսի որդուն, որը տրիբուն էր, հրամայեց ջոկատը տանել և դժբախտ մարտի մնացորդները թաղել: Պայմանավորված օրը Տիրիդատի ճամբարն եկան՝ վերջինիս պատիվ ցույց տալու համար, ականավոր հռոմեական հեծելազորական՝ Տիբերիոս Ալեքսանդրը, որը տրված էր Կորբուլոնին իբրև օգնական պատերազմում, և Կորբուլոնի փեսա՝ Վինիկիանոս Աննիոսը..., այդ ապահովությունը տրվեց, որպեսզի Տիրիդատը չվախենա դավադրությունից. հետո վերցրին քսանական հեծյալներ: Եվ Կորբուլոնին տեսնելուն պես, թագավորն առաջինը ցատկեց ձիուց. Կորբուլոնն էլ սպասեցնել չտվեց իրեն, այլ ոտքի վրա կանգնած նրանք իրար աջ ձեռք տվին: Հետո հռոմեացին գովեց երիտասարդին (այսինքն՝ **Տրդատին – Պ. Հ.**), որը թողնելով վտանգավոր ճանապարհը,*

բռնել է ապահով և երկար ուղին: Տիրիդատը նախապես շատ խոսելով իր ցեղի մեծատոհմիկության մասին, համեստորեն ավելացնում է հետևյալը. «Իհարկե կգնա Հռոմ և կտանի կայսրին նոր պատիվ՝ աղերսարկու Արշակունուն, թեպետ պարթևները պարտված չեն պատերազմում»: Այդ ժամանակ որոշվեց, որ Տիրիդատը կայսեր արձանի մոտ դնի թագավորական նշանը և հետ վերցնի միայն Ներոնի ձեռքից. բանակցությունն ավարտվեց համբույրով:

**Գլուխ 29.** Հետո, մի քանի օր անց, երկու կողմից էլ փայլուն տեսքով հանդես եկան և կանգնեցին զորքերը՝ այնտեղ դասակներով դասավորված պարթևական հեծելազորն իր հայրենի զարդարանքներով, այստեղ՝ հռոմեական լեգեոնները փայլուն արծիվներով, դրոշակներով և աստվածների արձաններով, կարծես տաճարում լինեին. մեջտեղում կառուցված էր բեմ, բեմի վրա դրված էր կուրուլ աթոռ[15] և կուրուլ աթոռի վրա՝ Ներոնի արձանը: Դրան մոտեցավ Տիրիդատը, համաձայն սովորության զոհեր մատուցանելով. գլխից վերցրած ապարոշը մոտեցնում է Ներոնի արձանի ստորին մասին, ընդ որում բոլորի սրտերը շատ հուզվեցին, սրանց հույզն ավելի ևս սաստկանում էր նրանից, որ հռոմեական զորքերի աչքերի առաջ մինչև այժմ պատկերանում էր սպանությունը կամ պաշարումը, իսկ այժմ դեպքերը հեղաշրջվեցին. Տիրիդատը պիտի գնա ի ցույց ժողովուրդներին և ո՞րչափ է նա պակաս գերի լինելուց:

**Գլուխ 30.** ... Հետևյալ օրը Տիրիդատը խնդրեց ժամանակ, որպեսզի նա այդպիսի երկար ճանապարհ ընկնելուց առաջ տեսնի իր եղբայրներին և մորը. այդ միջոցին նա իբրև պատանդ թողեց իր աղջկան և աղերսական նամակ ուղարկեց Ներոնին:

**Գլուխ 31.** Եվ բաժանվելով Պակորոսից Մեդիայում[16], նա Վոլոգեսին գտնում է էկբատանում (Համադանում)[17], վերջինս հոգում էր իր եղբոր մասին, և խսկապես նա սեփական սուրհանդակների միջոցով պահանջում էր Կորբուլոնից,, որ Տիրիդատը չկրի ստրկության նման որևէ վիճակ, ստիպված չլինի զենքը հանձնել, պահանջում էր, որ պրովինցիաների կառավարիչները չհրաժարվեն եղբայրաբար գրկախառնվելուց և չստիպեն իրենց սպասել դուրսը, որ Հռոմում նրան ցույց տրվի կոնսուլին հավասար պատիվ:

## Գիրք տասնվեցերորդ

(քաղվածք)

**Գլուխ 24.** Այսպիսով ամբողջ քաղաքով (Հռոմ) դուրս էին թափվել

*հանդիպելու պրինցեպսին (կայսրին) և նայելու թագավորին (Տիրիդատին)...*

*1. Պատմագիրը նկատի ունի այն հանգամանքը, որ 62 թ. աշնանը հռոմեական բանակները Անձիտ–Խարբերդի դաշտում, Արածանի գետի հարավային ափին գտնվող Հռանդեա վայրում շրջապատված էին հայ-պարթևական մեծաքանակ զորքերի կողմից:*

*2. Խոսքը Հայաստանում գտնվող հռոմեական բանակի գերագույն հրամանատար Կեսեննիոս Պետոսի մասին է:*

*3. Նկատի ունի պարթևների Վաղարշ (Վոլոգես) I արքայից արքային:*

*4. Որոշ ուսումնասիրողներ գտնում են, որ «հեծելազորի պետ Վասակը» հայ ազնվականության ներկայացուցիչ էր:*

*5. Նկատի ունի Ադիաբենեի թագավոր Մոնոբազոս (Մանավազ) II-ին:*

*6. Արածանի գետը Արևելյան Եփրատն է, այժմ՝ Մուրադ-չայ:*

*7.* ***«Անց են կացրել լծի տակով»*** *– գետնի մեջ խրված երկու նիզակների վրա դրվում էր երրորդը՝ մոտ մեկ մետր բարձրությամբ: Ճակատամարտում պարտված կողմը պետք է անցներ այդ անցքով, նախապես գցելով զենքն ու վերնազգեստը: «Լծի տակով անցնելը» հին ժամանակներում համարվում էր ամենամեծ ստորացումը և պարտվողների ստրկացման ապացույցը:*

*8. Քառասուն հռոմեական մղոնը հավասար է մոտավորապես 62 կիլոմետրի:*

*9. Խոսքը «Մեծ թագավոր Հայոց Մեծաց», հռոմեական դրածո Տիգրան VI-ի մասին է:*

*10. Այսինքն՝ Ներոն կայսրի:*

*11. Խոսքը զոհեր կատարելու ծիսակատարության մասին է:*

*12.* ***Իլլիրիա*** *– երկրամաս Բալկանյան թերակղզու հյուսիսարևմտյան մասում, Ադրիատիկ ծովի ափին: Ք. ա. 27 թվականից հռոմեական Իլլիրիկ պրովինցիան է:*

*13.* ***Մելիտենե*** *(Մալաթիա) – քաղաք Եփրատի աջ ափին, հետագայի Երրորդ Հայքի մայրաքաղաքը:*

*14. Այսինքն՝ Հռանդեան, որտեղ պարտություն էր կրել: Հենց այստեղ էլ՝ 64 թ. կնքվեց Հռանդեայի դաշնագիրը, որի համաձայն Տրդատ Արշակունին ճանաչվում էր Հայաստանի թագավոր:*

*15. Հատուկ բազմոց, որի վրա նստելու իրավունք ունեին միայն բարձր պաշտոնյաները՝ կոնսուլը, պրետորը, ցենզորը և կուրուլ էդիլը:*

*16. Այստեղ խոսքը Ատրպատականի մասին է:*

*17. Էկբատանը (Համադան) Մարաստանի մայրաքաղաքն էր, պարթև Արշակունիների ձմեռային նստավայրերից մեկը:*

## ՏՐԴԱՏ I ԱՐՇԱԿՈՒՆՈՒ ԳԱՀԱԿԱԼՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍԻ

### ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### Գիրք վաթսուներկուերորդ

19,1 *Մինչ նա[1] այս գործերով էր զբաղված, լուր ստացվեց Հայաստանից և միաժամանակ հաղթության դափնի: Քանզի Կորբուլոնը[2] (հռոմեական) ցրված զորամասերը միավորելուց և լքվածներին վարժեցնելուց հետո, թե՛ Վոլոգեսոսին[3], պարթևների թագավորին, թե՛ Տիրիդատեսին[4], Հայաստանի առաջնորդին, ահաբեկեց սոսկ իր մոտիկ գալու հաղորդումով*
2 *իսկ: Քանզի նա նման էր առաջին հռոմեացիներին ոչ միայն իր պայծառ ծագումով և ուժեղ մարմնով, այլև ուներ խորաթափանց միտք. և նա մեծ քաջություն, մեծ արդարություն և խոր հավատարմություն էր ցուցաբերում բոլորի՝ թե՛ յուրայինների և թե՛ թշնամիների հանդեպ: Այդ իսկ պատճառով*
3 *Ներոնը պատերազմը վարելու համար իր փոխարեն ուղարկեց նրան, տրամադրելով այնքան զորք, ինչքան չէր տվել ոչ մեկ ուրիշի[5], հավասարապես վստահ լինելով, որ սա կկարողանա թե՛ հաղթել բարբարոսներին և թե՛ իր դեմ չապստամբել: Եվ*
4 *նա այս երկու հարցում էլ նրան հուսախաբ չարեց, թեպետև Կորբուլոնը շատ մարդկանց վշտացրեց հենց այս անգամ, քանի որ հավատարիմ մնաց Ներոնին. որովհետև նրանք այնքան ցանկանում էին նրան իմպերատոր տեսնել Ներոնի փոխարեն, որ նրա այս վարմունքը համարում էին նրա միակ թերությունը:*

* * *

20,1 *Ահա այս Կորբուլոնը առանց դժվարության վերցրեց Արտաշատը[6] և քաղաքը հիմնահատակ կործանեց: Այս անելուց հետո նա շարժվեց դեպի Տիգրանակերտ, խնայելով բոլոր իրեն հանձնվողների երկիրը, բայց ավերելով դիմադրողների երկիրը, իսկ Տիգրանակերտը նրան հանձնվեց կամովին[7]: Նա այլ պայծառ ու փառավոր գործեր ևս կատարեց, որոնց պատճառով էլ նույնիսկ Վոլոգեսոսին, որը թեպետև ահեղ էր, ստիպեց հռոմեացիների պատվին արժանի հաշտություն կնքել:*

2 *Եվ Վոլոգեսոսը տեղեկանալով, որ Ներոնը Հայաստանը պարգևել է ուրիշներին, իսկ Ադիաբենեն երկիրն[8] էլ ավերվում է Տիգրանի[9] կողմից, ինքը պատրաստվեց արշավելու Սիրիա՝ Կորբուլոնի վրա, իսկ Ադիաբենեի Թագավոր Մոնոբազոսին և պարթև Մոնեսեսին[10] ուղարկեց Հայաստան: Սրանք Տիգրանին*
3 *պաշարեցին Տիգրանակերտում: Ու քանի որ իրենց պաշարումով սրանք ոչ մի վնաս չէին կարողանում հասցնել (Տիգրանին) և ամեն անգամ հարձակվելիս ետ էին մղվում թե՛ նրա և թե՛ նրա զորքում գտնվող հռոմեացիների կողմից, իսկ Կորբուլոնն էլ մեծ ճշտությամբ պահպանում էր Սիրիան, ապա*
4 *(Վոլոգեսոսը) հրաժարվեց իր մտադրությունից ու թողեց պատրաստությունը և Կորբուլոնի մոտ (բանագնաց) ուղարկելով, կարողացավ զինադադար կնքել այն պայմանով, որ պետք է մի նոր դեսպանություն ուղարկի Ներոնի մոտ, վերացնի (Տիգրանակերտի) պաշարումը և իր զինվորներին Հայաստանից դուրս բերի[11]: Իսկ Ներոնը նույնիսկ այդ ժամանակ նրան ոչ իսկույն, ոչ էլ հատուկ պատասխան չտվեց, իսկ Լուկիոս Կեսեննիոս Պետոսին[12] ուղարկեց Կապադովկիա, հետևելու համար, որ Հայաստանում ոչ մի ապստամբություն չբարձրանա:*
21,1 *Վոլոգեսոսը հարձակվեց Տիգրանակերտի վրա և Պետոսին, որը եկել էր նրանց օգնելու, ետ շպրտեց. և երբ վերջինս դիմեց փախուստի, հալածեց նրան, կոտորեց նրա կողմից Տավրոսի վրա հաստատված պահակազորը և նրան պաշարեց Հռանդեայում, որը գտնվում էր Արսանիաս[13] գետի մոտ: Եվ նա ետ*
2 *էր վերադառնալու ոչինչ չարած – քանզի որևէ կետում ամրության մոտենալ չէր կարողանում, քանի որ նա չուներ հոպլիտներ, ու թեև զորքի մեծ բազմությամբ, բայց առանց անհրաժեշտ պատրաստության եկած լինելով, զրկված էր պարենամթերքից – եթե Պետոսը չվախենար մինչև ռազմական ճամբարը հասնող նետահարումներից, ինչպես նաև ամեն տեղ հայտնվող նրա հեծյալներից և հաշտության համար լուր չուղարկեր նրան ու չընդուներ նրա պայմանները. նա երդվեց, որ կթողնի ամբողջ Հայաստանը, և որ Ներոնը այն կպարգևի*
3 *Տիրիդատեսին: Պարթևն ուրախացավ այս ամենից, որովհետև կարծում էր, թե առանց դժվարության կգրավի երկիրը և հռոմեացիներին իր ողորմածությամբ կդնի մեծ պարտքի տակ. մյուս կողմից էլ նա տեղեկացել էր, որ Կորբուլոնը, որի մոտ*

Պետոսը, նախքան պաշարվելը, մարդ էր ուղարկել օգնություն խնդրելով, արդեն մոտենում է, ուստի թողեց պաշարվածներին, նախապես պարտադրելով նրանց իր համար կամուրջ կապել Արսանիաս գետի վրա, ոչ այն պատճառով, որ ինքը կամրջի կարիքն ուներ, քանզի ինքը հետիոտն էր գետն անցել, այլ ցույց տալու համար նրանց իր գերազանցությունը: Բայց այս դեպքում նս ինքը կամրջի վրայով չհեռացավ, այլ մեկնեց փղի վրա նստած. իսկ մնացածները՝ ինչպես և առաջ:

22,1 Երբ դեռ նոր էր կապիտուլյացիան կատարվել, ահա և Կորբուլոնը անհնարին արագությամբ մոտեցավ Եփրատին և այնտեղ սպասեց: Երբ երկու զորքերը[14] հանդիպեցին իրար, ամեն օր կարող էր նկատել լեգեոնների և նրանց զորավարների միջև եղած մեծագույն տարբերությունը. սրանք ուրախանում և հրճվում էին իրենց արագության համար, իսկ նրանք վշտացած
2 և ամոթահար՝ հաշտության համար: Իսկ Վոլոգեսոսը Մոնեսեսին ուղարկելով Կորբուլոնի մոտ, պահանջեց նրանից լքել Միջագետքի ամրությունը. ու նրանք երկար բանակցեցին իրար հետ Եփրատի վրա գցած նույն այդ կամրջի վրա, նախապես
3 քանդելով դրա միջին մասը: Քանի որ Կորբուլոնը խոստացավ հեռանալ երկրից, եթե Պարթևը թողնի Հայաստանը, ապա այդ երկուսն էլ կատարվեց, մինչև որ Ներոնը, իմանալով տեղի ունեցածների մասին և ընդունելով Վոլոգեսոսի խնդրով նրա ուղարկած դեսպաններին, պատասխանեց նրանց, թե
4 Հայաստանը կտա Տիրիդատեսին, եթե սա Հռոմ գա. իսկ Պետոսին իշխանությունից զրկելով և նրա հետ եղած զինվորներին այլ վայրեր ուղարկելով, Կորբուլոնին դարձյալ կարգադրեց պատերազմել նրանց դեմ: Թեև ինքն անձամբ ուզում էր մասնակցել այդ արշավանքին, սակայն զոհ մատուցելիս ընկել էր. ուստի և չհամարձակվեց արշավանքի դուրս գալ, այլ մնաց երկրում:

23,1 Կորբուլոնը թեպետև բացահայտ պատերազմի էր պատրաստվում Վոլոգեսոսի դեմ, հարյուրապետի ուղարկելով, պատվիրեց Վոլոգեսոսին հեռանալ երկրից. հատկապես խորհուրդ տվեց իր եղբորն[15] ուղարկել Հռոմ և համոզեց նրան,
2 քանզի թվում էր, թե ինքը նրանից առավել ուժեղ է: Այսպիսով, նրանք գումարվեցին այդ նույն Հռանդեայում, թե՛ Կորբուլոնը, թե՛ Տիրիդատեսը. քանզի այս վայրը հաճելի էր երկուսին էլ. մեկին՝ որովհետև այստեղ պաշարելով հռոմեացիներին,

*կապիտուլյացիայի ենթարկեցին ու բաց թողեցին, իբրև ապացույց ողորմած վերաբերմունքի, իսկ մյուսին՝ այդ վայրը նախկինում յուրայինների կրած անպատվությունը ջնջելու*
3 *հնարավորություն էր տալիս: Այստեղ բարձր բեմ պատրաստվեց, և դրա վրա կանգնեցվեցին Ներոնի պատկերքը[16], և Տիրիդատեսը հայերի, պարթևների ու հռոմեացիների բազմության առաջ մոտեցավ դրանց ու խոնարհվեց, այնուհետև զոհ մատուցելով դրանց և հանդիսավոր կոչելով, իր գլխից խույրը[17] վերցրեց ու դրեց դրանց վրա. և Մոնոբազոսն ու*
4 *Վոլոգեսոսը ևս եկան Կորբուլոնի մոտ ու պատանդներ տվեցին նրան: Եվ այդ դեպքերի առթիվ Ներոնը մի շարք անգամ իմպերատոր հռչակվեց և, հակառակ ընդունված կարգի, հաղթահանդես կատարեց:*
5 *Եվ ահա Կորբուլոնը, թեպետ ուներ և՛ մեծ ուժ, և՛ ոչ պակաս փառք, և կարող էր հեշտությամբ դառնալ նույնիսկ իմպերատոր, քանի որ մարդիկ խստագույնս ատում էին Ներոնին, իսկ իրենով ամեն կերպ հիանում, բայց ինքը ո՛չ. որևէ խռովություն բարձրացրեց, ո՛չ էլ մեղադրվեց նման բանում:*
6 *Նա այժմ իրեն ավելի խոհեմ էր պահում. նա Աննիոսին՝ իր փեսային, որն իր փոխհրամանատարն էր, Հռոմ ուղարկեց, Տիրիդատեսին ուղեկցելու պատրվակով, բայց իրականում նրան դիտավորյալ կերպով ուղարկեց Ներոնի մոտ պատանդության: (Ներոնը) այնքան վստահ էր, թե նա չի ապստամբելու, որ նրա փեսային, որը թեև նախկինում պրետոր էր եղել, թույլատրեց վերցնել իրեն տեղակալ:*

## Գիրք վաթսուներեքերորդ

1,1 *Երբ (Հռոմում) կոնսուլներ էին Գայոս Տելեսինոսը և Սուետոնիոս Պավլինոսը[18], տեղի ունեցավ ամենափառահեղ մի բան, միաժամանակ նաև մեկ ուրիշ ամենաամոթալի դեպք: (Մի կողմից) Ներոնը մասնակցեց կիթառահարների մրցությանը, և երբ Մենեկրատեսը, կիթառահարության ուսուցիչը, ձիարշավարանում նրա պատվին հաղթահանդես կազմակերպեց,*
2 *ինքը հանդես եկավ իբրև կառավար: (Մյուս կողմից) Տիրիդատեսը ներկայացավ Հռոմ, իր հետ բերելով ոչ միայն իր, այլև Վոլոգեսոսի և Պակորոսի[19] և Մոնոբազոսի[20] որդիներին. ու նրանց ամբողջ երթը Եփրատի մոտից սկսած նմանվում էր*

հաղթահանդեսի: Քանզի ինքը՝ Տիրիդատեսը՝ թե՛ տարիքով,
2,1 թե՛ գեղեցկությամբ և թե՛ ծագումով ու խելքով ծաղկուն վի-
ճակում էր, և նրա ամբողջ շքախումբն ու արքունի հան-
դերձանքը ուղեկցում էր նրան. ու երեք հազար պարթևական,
ինչպես նաև մեծ թվով հռոմեացի հեծյալները հետևում էին
2 նրան: Նրանց թե՛ քաղաքներն էին դիմավորում տոնազարդ և
թե՛ ժողովուրդը՝ բարձրագոչ և հրճվագին, և ամբողջ պարենը
նրանք ստանում էին անվճար, այնպես որ նրանք ամենօրյա
ծախսը հանրային գանձարանից հաշվվում էր քսան բյուր
(դրաքմե)[21]: Եվ այս նույն ձևով կատարվում էր շարունակ ինն
ամիս տևած նրանց ամբողջ ուղևորության ընթացքում,
(Տիրիդատեսը) ամբողջ ճանապարհը, մինչև Իտալիա հեծյալ
3 անցավ[22] և նրա կողքին հեծյալ գնում էր նրա կինը, գլխին քողի
փոխարեն ոսկե սաղավարտ դրած, որպեսզի ոտնահարած
չլինի (մարդկանց) չերևալու իր հայրենի սովորույթը: Իսկ
Իտալիայում նա փոխադրվեց Ներոնի կողմից ուղարկված
երկձի (կառքով) ու Պիկենումի ճանապարհով եկավ Նեա-
4 պոլիս[23], (Ներոնի) մոտ: Նա Ներոնին մոտենալիս հրաժարվեց
մինչև իսկ ակինակեն մի կողմ դնել, թեպետև իրեն պատվիրել
էին, այլ գամերով այն ամրացրեց պատյանին. հետո նա ծնկի
3,1 եկավ ու ձեռները խաչաձևեց և նրան կոչելով իր վեհապետը,
երկրպագեց: Ներոնն ահա այս բանի համար ևս նրա վրա
հիացավ և նրան ամեն կերպ հյուրասիրելուց բացի, Պու-
տեոլիում (գլադիատորական) մենամարտեր կազմակերպեց:
Ագոնոթետեսն[24] էր Պատրոբիոսը՝ ազատ արձակված իր
ստրուկը, որն այնքան շքեղություն և ծախսեր էր ներդրել, որ
ամբողջ օրը ուրիշ ոչ ոք, բացի եթովպացիներից – այրեր,
կանայք և երեխաներ – չերևաց թատրոնում: Այս ամենի
2 համար Պատրոբիոսին ինչ-որ պատիվ պետք էր մատուցել,
ուստի Տիրիդատեսը իր բարձրադիր աթոռից նետահարեց
գազաններին և մեկ նատումով, եթե կարելի է հավատալ,
միանգամից երկու ցուլի վարսեց և սպանեց:
4,1 Սրանից հետո Ներոնը նրան Հռոմ առաջնորդեց և խույրը
դրեց գլխին: Ամբողջ քաղաքը զարդարված էր լույսերով և
պսակներով, և ամենուրեք երևում էին մարդկանց հոծ
բազմություններ. առանձնապես բազմամարդ էր Ֆորումը[25]:
2 Կենտրոնում, իրենց աստիճանների համեմատ՝ կանգնած էին
քաղաքացիները, սպիտակազգեստ և դափնեզարդ. իսկ

մնացած բոլոր տեղերում՝ պայծառորեն հանդերձավորված
զինվորները, որոնց զենքերն ու դրոշները փայլատակում էին:
Եվ նույնիսկ շրջակա բոլոր շենքերի կղմինդրե կտուրներն
անգամ չէին երևում (այնտեղ) բարձրացած բազմությունից:
3 Այս ամենն այսպես պատրաստվել էր գիշերվա ընթացքում, իսկ
լուսաբացին Ներոնը մտավ փորում, հագած հաղթահանդեսի
զգեստը, սենատի և պրետորականների հետ ու բարձրա-
բանալով բեմ, նստեց արքունի գահավորակի վրա: Դրանից
հետո Տիրադատեսը և նրա ուղեկիցներն անցան երկուստեք
կանգնած հոպլիտների շարքերի միջով ու մոտենալով բեմին,
5,1 երկրպագեցին նրան, ինչպես նախկինում: Երբ այս առթիվ
աղաղակ առաջացավ, Տիրիդատեսը ահաբեկվեց և որոշ
ժամանակ մնաց անխոս, վախենալով, թե արդեն կորստի է
մատնված: Այնուհետև, երբ լռություն ազդարարվեց, նա
վերագտավ իր կորովը, և բռնադատելով իր հպարտությունը,
պատեհության և անհրաժեշտության առաջ դարձավ
ծառայամիտ, առանց ուշադրություն դարձնելու, թե ստորա-
ցուցիչ ինչ խոսք էր բարբառելու իր ստանալիք պարգևի
հույսով: Նա խոսեց այսպես. «Ես, ո՜վ վեհապետ, Արսակեսի[26]
հետնորդն եմ, Վոլոգեսոս և Պակորոս թագավորների եղբայրը,
իսկ քո՝ ծառան: Ու եկել եմ ես դեպի քեզ, իմ աստծուն,
երկրպագելու քեզ, ինչպես Միթրային[27], և թող ինձ համար
3 կատարվի այն, ինչ դու ինքդ կամենաս, քանզի դու ես իմ
վիճակը և իմ բախտը»: Իսկ Ներոնը նրան այսպես պա-
տասխանեց. «Եվ դու լավ արեցիր անձամբ գալով այստեղ,
որպեսզի քո ներկայությամբ իմ ներկայությունը վայելես. և այն
ամենը, ինչ ոչ քո հայրը քեզ ժառանգություն թողեց, ոչ էլ քո
եղբայրները քեզ տալուց հետո պահպանեցին, ես բոլորը քեզ
պարգևում եմ և դարձնում Հայաստանի թագավոր, որպեսզի
թե՛ դու և թե՛ նրանք հասկանան, թե ես կարող եմ թա-
գավորություններ և՛ վերցնել, և՛ պարգևել»: Այս ասելով նա
պատվիրեց բեմի առաջ հատկապես այդ առթիվ պատ-
րաստված աստիճանի վրա բարձրանալ. և երբ (Տիրիդատեսին)
նստեցրին նրա ոտքերի առաջ, նա խույրը դրեց նրա գլխին:
6,1 Այնժամ մեծ և բազմապիսի աղաղակ բարձրացավ: Այնուհետև,
(սենատի) հատուկ որոշման համաձայն, թատերական
հանդիսություն տեղի ունեցավ: Եվ թատրոնը, ոչ միայն նրա
բեմը, այլև նրա ամբողջ շրջագիծը ներսից ոսկեպատած էր, և

*այնտեղ եղած ամեն ինչ ոսկով էր զարդարված. ուստի և այդ*
2 *օրը կոչեցին «ոսկե»: Արևից պաշտպանվելու համար գլխավերևում պարզած վարագույրները ծիրանագույն էին, և դրանց մեջտեղում ասեղնագործած էր Ներոնը՝ ռազմակառքը վարելիս, իսկ նրա շուրջը փայլփլում էին ոսկե աստղեր:*
3 *Ամեն ինչ ահա այսպես կատարվեց. և պարզ է, որ նրանք չքեղ խրախճանք ևս ունեցան: Եվ Ներոնն այս ամենից հետո հրապարակավ կիթառահարեց և ռազմակառք վարեց՝ հագած կանաչ համազգեստ և գլխին դրած կառապանի սաղավարտ:*
4 *Այս բոլորից Տիրիդատեսը զզվանք զգաց նրա հանդեպ, բայց գովաբանեց Կորբուլոնին, որին միայն մեկ բանում մեղադրեց, այն, որ այդպիսի վեհապետ ունենալով համբերում էր: Իսկապես նա իր այս խոսքերը չթաքցրեց նույնիսկ Ներոնից, այլ մի անգամ ասաց նրան. «Ով վեհապետ, հանձին*
5 *Կորբուլանի լավ ստրուկ ունես»: Բայց այս ամենն ասվեց նրան առանց հասկացվելու. իսկ բոլոր մյուս դեպքերում նա շողոքորթեց և շատ վարպետորեն փորձեց հաճոյանալ նրան, որի համար էլ նա բազմապիսի նվերներ ստացավ, ինչպես ասում են, հինգ հազար բյուր (դրաքմե)*[29]*: Այս ամենից բացի*
6 *նա բազմաթիվ վարպետներ վերցրեց իր հետ, մի մասին ստանալով Ներոնի կողմից, մյուս մասին համոզելով փողի միջոցով: Այսուհանդերձ Կորբուլոնը այդ բոլորին չթույլատրեց անցնել Հայաստան. այլ միայն նրանց, ում պարգևել էր Ներոնը:*
7,1 *Դրա համար էլ Տիրիդատեսը (Կորբուլոնի վրա) առավել հիացավ, իսկ Ներոնին՝ արհամարհեց: Ու նա վերադարձավ ոչ իր եկած ճանապարհով – իլլիրիական երկրով՝ Հոնիական ծովի հյուսիսով – այլ Բրենդեսիումից*[30] *նավեց մինչև Դյուրրաքիոն*[31]*: Նա տեսավ նաև Ասիայի քաղաքները, որի հետևանքով էլ նա զարմացել էր հռոմեական տերության հզորությունից և գեղեցկությունից:*
*Մի անգամ Տիրիդատեսը պանկրատիոն (մրցություն)*[32]*, դիտելիս, տեսնելով, որ մենամարտողներից մեկը վայր ընկնելուց հետո ծեծվում էր հակառակորդի կողմից, բացականչեց. «Մարտն անարդար է, քանզի արդարացի չէ ընկնողին ծեծելը»:*
2 *Տիրիդատեսն ահա վերաշինելով Արտաշատը, այն անվանեց Ներոնեա*[33]*, բայց Վոլոգեսոսը չցանկացավ իսկ գալ Ներոնի մոտ, թեպետև բազում անգամներ հրավիրել էր. և, ի վերջո, երբ*

*(այդ հրավերները) ձանձրալի դարձան, պատասխան ուղարկեց նրան, թե՝ «Ավելի քեզ համար է հեշտ, քան թե ինձ համար, այսքան ծովեր անցնելը. ուստի և եթե դու գաս Ասիա, այնժամ մենք կպայմանավորվենք, թե որտե՞ղ հանդիպենք իրար»: Վերջում այսպիսի հաղորդում հղեց Պարթևը (Ներոնին):*

8,1 *Ներոնը թեպետև զայրացել էր նրա վրա, (բայց) չնավեց նրա դեմ, ոչ էլ եթովպացիների կամ Կասպյան դռների կողմը, ինչպես նախկինում ծրագրել էր: Այսուհանդերձ նա ուրիշ գոր-*
2 *ծերի հետ միասին, այս երկու կողմերն էլ լրտեսներ ուղարկեց, բայց տեսնելով, որ այդ երկրների հպատակեցումը կարոտ է ժամանակի և ջանքերի, հույս էր տածում, որ դրանք ինքնաբերաբար կմիանան իրեն:*

*1. Խոսքը Ներոն կայսեր մասին է:*

*2. Խոսքը հռոմեական զորավար Գնեոս Դոմիտիոս Կորբուլոնի մասին է:*

*3. Սա Պարթևստանի թագավոր Վաղարշ I-ն է:*

*4. Վաղարշ I-ի կրտսեր եղբայրն է՝ Հայաստանում Արշակունյաց հարստության հիմնադիր Տրդատ I-ը (52, 66-88):*

*5. Կորբուլոնի հրամանատարության տակ էին գտնվում արևելքում տեղաբաշխված հռոմեական բոլոր լեգեոնները (շուրջ 30 հազար զինվոր), ինչպես նաև Հռոմի դաշնակից թագավորների զինված ուժերը:*

*6. Հռոմեացիները Արտաշատը գրավեցին 58 թ. ամռանը:*

*7. Կորբուլոնը Տիգրանակերտ մտավ 59 թ. վերջերին:*

*8. Փոքրիկ թագավորություն Տիգրիսի միջին հոսանքի շուրջն ընկած տարածքում՝ Արբելա մայրաքաղաքով:*

*9. Խոսքը Մեծ Հայքի թագավոր՝ հռոմեական դրածո Տիգրան VI-ի մասին է:*

*10.* ***Մոնեսես*** *- պարթև մեծատոհմիկ, պարթևական բանակի հեծելազորի հրամանատար:*

*11. Հռոմեա-պարթևական սույն զինադադարը կնքվել է 61 թ., ըստ որի՝ Վաղարշ I-ը դադարեցնում էր Տիգրանակերտի պաշարումը և իր զորքերը դուրս բերում Հայաստանից, իսկ Կորբուլոնը Հայաստանից ետ է կանչում հռոմեական լեգեոնները և Տիգրան VI-ին հայտարարում գահընկեց:*

*12. Կեսեննիոս Պետոսը Արևելք ժամանեց 61 թվականին:*

*13.* ***Արսամոսատա*** *- Արածանի գետն է: Ն. Ադոնցը Հռեանդեան տեղադրում է Արածանիի ափին՝ Անձիտ-Խարբերդի դաշտում և նույնացնում է Եռանդ տեղանվան հետ (տե՛ս* **Н. Адонц,** Армения в эпоху Юстиниана, *էջ 36-37):*

*14. Խոսքը Կորբուլոնի և Պետոսի զորամասերի մասին է:*

*15. Այսինքն՝ Տրդատ I-ը:*

*16. «Պատկերք» ասելով՝ Դիոնը նկատի ունի Ներոնի կիսանդրին:*

*17. Բնագրում՝ դիադեմա:*

*18. Այսինքն՝ 66 թվականին:*

*19. Խոսքը Վաղարշ I-ի և Տրդատ I-ի եղբայր՝ Ատրպատականի թագավոր Բակուրի մասին է:*

*20. Սա Աղիաբենեի Մոնոբազոս (Մանավազ) II թագավորն էր:*

*21. Շուրջ 200 հազար հունական դրաքմե է, որը հավասար է 800 հազար հռոմեական սեստերցի կամ 200 հազար ոսկի ֆրանկի:*

*22. Զրադաշտական կրոնը արգելում էր ծովային ճանապարհորդություն կատարել:*

*23. Իտալական ժամանակակից Նեապոլ քաղաքն է:*

*24.* ***Ագոնոթետես*** *– անտիկ աշխարհում այսպես էին հորջորջվում գլադիատորական մրցումների կազմակերպիչները, ֆինանսավորողներն ու դատավորները:*

*25.* ***Ֆորում*** *– Հռոմ քաղաքի վարչական, քաղաքական, կրոնական ու առևտրական կյանքի գլխավոր հրապարակը, կենտրոնը: Կառուցվել է Ք. ա. VI դարի սկզբներին՝ Պլատինյան և Կապիտոլյան բլուրների ստորոտում: Այստեղ էին գտնվում դատարանը, դրամահատարանը, պետության արխիվը, առավել աչքի ընկնող տաճարները, այստեղ էր իր նստաշրջաններն անցկացնում սենատը (ծերակույտ):*

*26.* ***Արսակես*** *(Արշակ) – ըստ ավանդության, պարթև Արշակունիների նախահայրն է՝ սկյութական պարն կամ ապարն ցեղի առաջնորդը: Ի պատիվ իրենց նախահոր՝ պարթևական բոլոր թագավորները կրում էին «Արշակ» տիտղոսը:*

*27. Միթրան (Միհր) իրանա-հնդկական դիցարանի գլխավոր աստվածներից մեկն էր, կյանք պարգևող և ցերեկային լույսի աստվածը, նույնացվել է արեգակի հետ:*

*28. Այսինքն՝ 50 միլիոն դրաքմե, որը հավասար է 200 միլիոն հռոմեական սեստերցի կամ 50 միլիոն ոսկի ֆրանկի:*

*29. Արտաշատը հիմնահատակ կործանվել էր 59 թ.՝ Կորբուլոնի կարգադրությամբ:*

*30. Նավահանգստային քաղաք Կալաբրիայում (Հարավային Իտալիա):*

*31. Քաղաք Իլլիրիայում՝ Ադրիատիկ ծովի ափին, այժմ՝ Դուրես:*

*32.* ***Պանկրատիոն*** *– ըմբշամարտի և բռնցքամարտի տարրերից կազմված մենամարտի մի տարատեսակ:*

*33. Հայերը չընդունեցին իրենց մայրաքաղաքի «Ներոնեա» խորթ անվանումը և Հայաստանի վերականգնված մայրաքաղաքը շարունակվում էր նախկինի պես կոչվել Արտաշատ:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՏՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *Է*

### ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ, ԵՎ ԹԵ Ո՛ՐՏԵՂԻՑ ՀԻՄՆԵՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՀՐԱՄԱՅԵՑ ԿԱՌԱՎԱՐՎԵԼ

*Այս գլուխը մեծ է, հավաստի պատմություններով լի և արժանի է ընդարձակ ու կոկիկ պատմվելու: Որովհետև շատ բան կա այստեղ պատմելու տների, ցեղերի, քաղաքների, գյուղերի, դաստակերտների և ընդհանրապես թագավորության կարգերի և կարգավորման վերաբերյալ, ինչպես նաև թագավորության հետ կապված զորքերի, զորապետների, կողմերի կուսակալների և սրանց նմանների մասին:*

*Արդ՝ նախ և առաջ թագավորը[1] կարգավորում է ինքն իրեն և իր տունը, սկսելով իր գլխից ու թագից[2]: Եվ Բագարատ կոչվածին, որ հրեաներից էր ծագում[3], շնորհակալություն է հայտնում հենց սկզբից անձնատուր լինելու և թագավորին օժանդակելու համար, ինչպես և նրա հավատարմության ու քաջության համար պարգևում է նրան ցեղի վերը հիշված տանուտիրական պատիվը[4], իրավունք տալով թագ դնել թագավորի գլխին և կոչվել թագադիր[5], այլև ասպետ[6], և մանր մարգարիտից երեք փաթ վարսակալ կրել առավել ոսկու և ակնեղենի, երբ արքունիքում և թագավորի տանը շրջելիս լինի:*

*Իրեն զգեստներ հագցնող նշանակում է Ձեռեսին, քանանացիների սերնդից և նրա ցեղի անունը դնում է Գնթունի[7], չգիտեմ ինչ պատճառով: Իսկ իրեն զինված թիկնապահներ է նշանակում Հայկազն Խոռի սերնդից ընտիր և քաջ նիզակավոր և սուսերավոր մարդկանց, և նրանց նախարարության գլուխ է նշանակում Մաղխազ անունով մի բարի ու սրտոտ մարդու. բայց ցեղի անունը պահում է սկզբնականը[8]: Իսկ Դատին, որ Գառնիկի զավակներից էր, Գեղամից սերված, նշանակում է արքունական որսերի վրա: Նա ունեցավ մի որդի Վարժ անունով, որի անունով և այս ցեղը կոչվեց[9], բայց այս հետո եղավ, Արտաշեսի ժամանակ: Գաբաղ անունով մեկին նշանակում է ձիերի երամակների վրա, իսկ Աբելին սպասների և գահերի[10] վրա. նրանց պարգևում է գյուղեր, որոնք նրանց անուններն են կրում, ինչպես նաև նախարարությունները կոչվեցին Աբեղյան և Գաբեղյան[11]:*

*Իսկ Արծրունիներն[12] ըստ իս ոչ թե Արծրունի են, այլ արծիվունի, որոնք նրա (Թագավորի) առջև արծիվներ էին կրում: Ես զանց եմ անում առասպելական դատարկաբանությունները, որ պատմում են Հադամակերտում[13], իբր թե երեխայի քնելուն հակառակվելիս են եղել անձրևն ու արևը, և թռչունը հովանի է եղել թալկացած պատանուն: Գնունիներն էլ ըստ իս գինիունի են, որ Թագավորին արժանի ըմպելիքներ էին պատրաստում. և զարմանալի կերպով զուգադիպեցին նրա գործն ու անունը, որովհետև Թագավորին ըմպելիքներ էր պատրաստում ընտիր և համեղ գինիներից և անունն էլ Գին էր, որի վրա Վաղարշակը շատ զվարճանալով, ասում են, դասում է նախարարական ցեղերի թվում[14]: Եվ այս երկու տունը, Արծրունիներն ու Գնունիները, Սենեքերիմի[15] սերունդներից են:*

*Ասեմ նույնպես, որ Սպանդունիներին[16] նշանակում է սպանդանոցների վրա, իսկ Հավունիներին՝ բազեակիրներ և բազե բռնողներ, որովհետև ապրում էին անտառներում[17]: Եվ եթե դատարկախոս չհամարես ինձ՝ կասեմ, որ Ձյունականներին[18] էլ նշանակում է ամառանոցների պահապաններ և ձյունակիրներ, որոնք առաջադիմելով ազնվականություն ստացան, իբրև Թագավորներին մտերիմ մարդիկ:*

*Եվ արքունիքում չորս պահապան գունդ է նշանակում, ամեն մեկը բյուր սպառազեն մարդուց բաղկացած, բուն հին Թագավորների սերունդներից, մեր նախնի Հայկից ծագած, որոնք բուն ոստան[19] էին կոչվում, և երբեմն-երբեմն հայրերից ժառանգություն էին ստանում գյուղեր և դաստակերտներ: Բայց վերջերը, Պարսից Թագավորների ժամանակ, ինչպես լսում եմ, ուրիշ գնդեր են կազմվել ու ոստանի կոչվել: Չգիտեմ, արդյոք նախկին ցեղի սպառվելո՞ւ պատճառով, թե մի որևէ ընդդիմության պատճառով այդ ցեղը դեն գցելով և նրա տեղը ուրիշ գնդեր նշանակելով՝ արքունի անունով: Բայց առաջինը հաստատ հին Թագավորների սերնդից էր, ինչպես և այժմ կան Վրաստանում, որոնք Սեփեծուլ[20] են կոչվում: Նաև հրամայում է նույն ցեղից ներքինիներ պատրաստել և նրանց նահապետ է նշանակում Հայրին[21], որի իշխանությունը տարածվում է Ատրպատականից մինչև Ճվաչ և Նախճավան: Բայց սրա պատմությունը, թե ո՛րպես և ո՛րտեղ պատահեց, հիշատակված չէ, և ես չգիտեմ:*

## Ը

### ՄԱՐԱՑ ԱԺԴԱՀԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ՍԵՐՆԴԻՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՈՐԴ ՆՇԱՆԱԿԵԼԸ

Թագավորի տունը կարգավորելուց հետո (Վաղարշակը)՝ թագավորության երկրորդ է նշանակում Աժդահակի՝ Մարաց թագավորի սերնդից, որ այժմ կոչվում են Մուրացյան[22], որովհետև այդ ցեղի նահապետներին չեն ասում Մուրացյան տեր, այլ Մարացիների տեր: Նրան թողնում է բոլոր գյուղերը, որոնց բնակիչները գերի էին բերված Մարաստանից: Իսկ արևելյան կողմից, հայերեն խոսակցության վերջի սահմաններում, երկու կուսակալ է նշանակում մի-մի բյուր մարդով, նահապետական տների ցեղերից, Սիսակյաններին[23] և Կադմոսի[24] սերունդներից, որոնց անունները հիշեցինք մեր գրքի նախորդ գլուխներից մեկում[25]:

Սրանից հետո (Վաղարշակը) հաստատում է արևելյան հյուսիսային կողմի մեծ-անվանի բազմաբյուր կուսակալությունը, Կուր կոչված մեծ գետի ընթացքով, որ անցնում է մեծ դաշտով (կուսակալ է նշանակում) Առանին[26], որ անվանի մարդ էր, առաջինը բոլոր մտավորական և հանճարեղ գործերում: Բայց գիտցիր, որ մենք Առաջին գրքում մոռացանք հիշատակել այս մեծ և անվանի տոհմը, այսինքն՝ Սիսակից սերված ցեղը, Երասխ գետից մինչև Հնարակերտ կոչված ամրոցը[27], երկիրն էլ Աղվանք կոչվեց նրա քաղցր բնավորության պատճառով, որովհետև  նրան աղու էին ասում: Այս (Սիսակի) սերնդից էր այս անվանի և քաջ Առանը, որ Պարթև Վաղարշակի կողմից բյուրապետ կուսակալ նշանակվեց: Ասում են, որ սրա զավակներից են սերվել Ուտեացիների ազգը[28] և Գարդմանացիների[29], Ծավդեացիների ու Գարգարացիների[30] իշխանությունները:

Իսկ Շարայի[31] զավակներից Գուշարին  ժառանգություն տվեց Մթին լեռը[32], այսինքն՝ Կանգարքը և Ջավախքի  կես մասը, Կողբը, Ծոբը, Ձորը[33] մինչև Հնարակերտ ամրոցը: Բայց Վաղարշակը Աշոցքի[34] տեր և Տաշիրքի[35] սեպուհ է նշանակում Գուշարի զավակներից Հայկազնին: Իսկ Կովկաս լեռան դեմ հյուսիսի  կուսակալ է նշանակում մեծ և հզոր ցեղը և նահապետության  անունը դնում է Գուգարացիների[36] բդեշխ, որ  Դարեհի Միհրդատ նախարարի  սերնդից էր, որին Ալեքսանդրը[37] բերելով իշխան նշանակեց Իվերիացիների ցեղի գերիների վրա, որոնց բերել էր Նաբուգոդոնոսորը[38], ինչպես պատմում է Աբյուդենոսը[39] ասելով. «Մեծազոր Նաբուգոդոնոսորը ավելի հզոր էր, քան  Հերակլեսը. նա զորք ժողովելով հասնում է լիբիացիների և իվերիացիների երկիրը[40] և հաղթահարելով իրեն է ենթարկում և նրանցից մի մասը տանում բնակեցնում է Պոնտոս ծովի աջակողմում»[41]:  Իվերիան գտնվում է արևմուտքում՝  աշխարհի եզրում: Իսկ Բասենի մեծ հովտում նահապետություն է հաստատում Որդունի

անունով Հայկի սերունդներից:

Իսկ Տորքին, որ սերված էր Հայկի թոռ Պասքամից, մի տգեղ, բարձր, կոպիտ կազմվածքով, տափակ քթով, փոս ընկած աչքերով, դժնյա հայացքով մարդու, որին սաստիկ տգեղության պատճառով կոչում էին Անգեղյա, որ վիթխարի հասակ և ուժ ուներ, արևմուտքի կուսակալ է նշանակում, իսկ ցեղի անունը կոչում է Անգեղ տուն՝[42] երեսի տգեղության պատճառով:

Բայց եթե ուզում ես, ես էլ նրա մասին անհամ ու անտեղի ստեր կպատմեմ, ինչպես պարսիկները, որ Ռոստոմ Սագճիկի[43] մասին պատմում են, թե հարյուր քսան փղի ուժ է ունեցել: Որովհետև նրա ուժեղության և սրտոտ լինելու պատճառով երգերը պատմում էին նրա մասին չափազանց անհարմար բաներ, որոնք ո՛չ Սամսոնին են հարմարվում, ո՛չ Հերակլեսին և ո՛չ Սագճիկին: Որովհետև երգում էին նրա մասին, իբր թե ձեռք էր զարկում որձաքար ապառաժներին, որոնց վրա ոչ մի ճեղքվածք չկար, ուզածին պես ճեղքում էր մեծ ու փոքր, եղունգներով տաշում էր, տախտակներ էր ձևացնում և նույնպես եղունգներով նրանց վրա գծում էր արծիվներ և նման բաներ: Պոնտոս ծովի ափին պատահել է թշնամիների նավերի և վրա է հարձակվել. նրանք հեռացել են խոր ծովը մոտ ութ ասպարեզ: Չկարողանալով նրանց հասնել, ասում են, վերցնում է բլրաձև ժայռեր և շպրտում է նրանց հետևից: Ջրերի ալեկոծվելուց ոչ սակավ նավեր ընկղմվում են, և ջրերի պատառումից առաջացած ալիքները մնացած նավերը շատ մղոններ հեռու են քշում: Ո՜հ, չափազանց առասպել է այս, առասպելաց առասպել: Բայց, ի՞նչ անես, որ մարդը սաստիկ ուժեղ էր և այսպիսի զրույցների արժանի:

Սրանից հետո (Վաղարշակը) հաստատում է Ծոփաց նախարարությունը Չորրորդ կոչված Հայքում[44]: Նույնպես հաստատում է Ապահունյաց նախարարությունը[45], ինչպես և Մանավազյանը[46] և Բզնունականը[47] Հայկի նույն սերունդներից, և բնակիչներից առաջավորներին գտնելով՝ տերեր է նշանակում՝ գյուղերի և գավառների անուններով նրանց կոչելով:

Բայց մոռացանք Սլաք կոչված դժնյա մարդուն, որի մասին հաստատ չեմ կարող ասել, արդյոք Հայկի՞ց էր ծագել, թե՞ նրանից առաջ մեր երկրում ապրողներից, որոնց գոյության մասին պատմում են զրույցները. բայց նա քաջ մարդ էր: Սրան քիչ մարդկանցով նշանակում է լեռը պահպանելու և քոչեր որսալու. սրանք կոչվեցին Սլկունիներ[48]: Այսպես և նույնպիսի գործերի վրա նշանակում է անդառնալի Միանդակին, որից սերվեցին Մանդակունիները[49]:

*Եվ Վահագնի զավակներից գտնելով մարդիկ, որոնք ինքնակամ խնդրեցին մեհյանների սպասավորությունը, նրանց շատ պատվում է, նրանց է հանձնում քրմությունը, դասում է առաջին նախարարությունների շարքում և կոչվում է Վահունիներ[50]: Նույնպես գտնելով, որ Առավենյանները[51] և Զարեհավանյանները[52] առաջին թագավորների սերունդներից են, նշանակում է նույնանուն ավաններում:*

*Իսկ Շարաշանին, որ Սանասարի[53] տնից էր, մեծ բդեշխ և կուսակալ է նշանակում հարավ-արևմուտքում: Ասորեստանի սահմաններին մոտ, Տիգրիս գետի ափին, նրան գավառներ պարգևելով Արձնը և նրա շրջակայքը[54], Տավրոս լեռը, որ է Սիմը, և ամբողջ Կղեսուրը[55]:*

*Իսկ Մոկսում գտնելով նույն գավառից մի մարդ, որ ձեռքի տակ ուներ բազմաթիվ ավազակներ, հաստատում է նախարարություն[56]: Նույնպես հաստատում է Կորդվացիներին[57], Անձևացիներին[58] և Ակեացիներին[59] նույնանուն գավառներից: Իսկ Ռշտունիների[60] և Գողթնեցիների[61] մասին գտա պատմված, թե նրանք անկասկած Սիսական հատվածն են կազմում, բայց չգիտեմ, արդյոք գավառնե՞րն են կոչվել մարդկանց անունով, թե գավառների անունով կոչված են նախարարությունները:*

*Այս բոլորից հետո Արմավիրում մեհյան շինելով՝ արձաններ է կանգնեցնում արեգակին, լուսնին և իր նախնիներին: Վաղարշակը շատ խնդրեց, նույնպես և խոսքերով հարկադրեց հրեա Շամբատի զավակ Բագարատին, որ թագադիր և ասպետ էր, որպեսզի թողնի հրեական կրոնը և կուռքեր պաշտի, բայց երբ նա հանձն չառավ, Վաղարշակ արքան նրա կամքին թողեց:*

*Նաև հրաման է տալիս, նորոգել Շամիրամի քաղաքը, և ուրիշ շատ տեղերում շինել բազմամարդ քաղաքներ, նշանավոր մարդաշատ գյուղեր:*

*Եվ իր թագավորական տանը օրենքներ է հաստատում, ժամեր է սահմանում մտնելու և իջնելու, կերուխումի և զբոսանքների համար: Սահմանում է զինվորական կարգեր՝ առաջին, երկրորդ, երրորդ և այլն. և երկու մարդ գրով հիշեցնողներ, մեկը բարին հիշեցնողը, մյուսը՝ վրեժխնդրությունը: Բարին հիշեցնողին հրաման է տալիս՝ թագավորի բարկանալու կամ անիրավացի հրաման տալու դեպքում հիշեցնել իրավացին և մարդասիրությունը: Սահմանում է իրավարարներ արքունի տանը, իրավարարներ քաղաքներում և ավաններում: Հրաման է տալիս, որ քաղաքացիների հարգն ու պատիվը ավելի լինի, քան գյուղացիներինը, որ գյուղացիները պատվեն քաղաքացիներին, ինչպես իշխանների, բայց որ քաղաքացիները շատ չգոռոզանան*

*գյուղացիների մոտ, այլ եղբայրաբար վարվեն, բարեկարգության և աննախանձ կյանքի համար, որ հիմք է կազմում շենության և խաղաղ կյանքի, – և ուրիշ նման բաներ:*

*Եվ որովհետև շատ որդիներ ուներ, հարմար գտավ, որ բոլորն էլ միասին իր մոտ չմնան Մծբինում[62], այլ նրանց ուղարկում է բնակվելու Հաշտենից գավառը[63], և նրան սահմանակից Ձորը, որ Տարոնից դուրս է գտնվում, նրանց է թողնում բոլոր գյուղերը, ավելացնելով նաև առանձին եկամուտներ և ռտեստ արքունի (գանձարանից): Միայն իր առաջին որդուն, որ կոչվում էր Արշակ, պահում է իր մոտ, իբրև թագավորության հաջորդ, նաև նրա որդուն, որին կոչեց Արտաշես և որին շատ էր սիրում, որովհետև երեխան հիրավի կայտառ էր և ուժեղ կազմվածքով, այնպես որ նրան նայողները նախատեսում էին, թե ինչ արիություններ պիտի զարգանան նրա մեջ: Եվ այս բանն այնուհետև մինչև վերջը օրենք դարձավ Արշակունի թագավորների համար, որ մի որդին ապրի թագավորի հետ՝ թագավորության փոխանորդ լինելու համար, իսկ մյուս որդիներն ու դուստրերը գնան Հաշտենից կողմերը իբրև ցեղի ժառանգներ:*

*Այսպիսի քաջագործություններից և բարեկարգություններից հետո Վաղարշակը մեռնում է Մծբինում, քսաներկու տարի թագավորելուց հետո:*

*1. Այսինքն՝ Վաղարշակը. ըստ Խորենացու, սա Հայոց Արշակունյաց թագավորական հարստության հիմնադիրն է: Ուսումնասիրողները ցույց են տվել, որ այս Վաղարշակը չնայած հավաքական անձնավորություն է, սակայն, նա իր հիմնական գծերով նույնանում է Մեծ Հայքի թագավոր Տրդատ I-ի հետ (տե՛ս 19-րդ էջ, ծան. № 3):*

*2. Խորենացին նկատի ունի այն, որ թագավորը կարգավորում է պալատական նիստուկացը, արարողությունները, սահմանում է թագի ու գահի, արքայական հանդերձների ձևերը:*

*3. Հայ ավանդական պատմագրությունը, հատկապես Բագրատունյաց ջատագով մատենագիրները, բազմիցս շեշտում են այս տան հրեական ծագումը՝ նրա փառքն ավելացնելու միտումով:*

*4. Այսինքն՝ Վաղարշակը Շամբատ Բագարատին տանուտեր, նահապետ է նշանակում, որի անունից նրա տոհմը կոչվեց Բագրատունի:*

*5. **«Թագադիր»** – հին Հայաստանում թագավորին թագադրելու պաշտոնը վարող գործակալություն:*

*6. **«Ասպետ»** – Ստ. Մալխասյանցի կարծիքով, սկզբնական շրջանում, ասպետ էր կոչվում թագավորի մերձավոր խորհրդականն ու երկրի ընդհանուր կառավա-*



**Գառնիի հունարեն արձանագրությունը**

րինչը:

7. Գնթունիները Հայոց արքունիքում վարում էին հատուկ գործակալություն, որի պարտականությունն էր թագավորին զգեստ հագցնելը: Գնթունիների տան ժառանգական սեփականությունն էր Այրարատի 15-րդ գավառ Նիգը, այժմյան Ապարանի շրջանը:

8. Այսինքն՝ Խոռի անունից այդ տոհմը կոչվեց Խոռխոռունի, իսկ Մաղխազ Խոռխոռունու անունից էլ այդ տոհմի՝ Հայոց արքունիքում վարած Մաղխազունի գործակալությունը: Այս գործակալությունը վարում էր թագավորի թիկնապահ գնդի հրամանատարի և արքունիքի պաշտպանության պարտականությունները: Խոռխոռունիների նախարարական տան ժառանգական սեփականությունն էր Տուրուբերան նահանգի 16-րդ գավառ Խոռխոռունիքը՝ Բզնունյաց գավառից հյուսիս:

9. Նկատի ունի Վարաժնունի նախարարական տունը, որը ժառանգական տոհմակալվածքներ ուներ (համանուն գավառներ) Այրարատում, Վասպուրականում և Տուրուբերանում: Այրարատի 18-րդ գավառ Վարաժնունիքը այժմյան Կոտայքի, Տավուշի և Գեղարքունիքի մարզերի, միմյանց հատող տարածքն է:

10. **Գահ** – պարսկերեն բառ է, որը նշանակում է տեղ, որից նստելու տեղ, բազմոց, աթոռ: Ըստ Ստ. Մալխասյանցի, այստեղ բառս գործ է ածված նշելու համար այն տեղը, բազմոցը, որ նախարարները գրավում էին թագավորի սեղանի շուրջը կամ ատյանում և որով որոշվում էր նախարարներից յուրաքանչյուրի ավագության կարգը:

*11. ............................................... նախարարական տան ժառանգական սեփականությունն էր Այրարատի 3-րդ գավառ Աբեղյանքը, որը տեղադրվում է Երասխի ձախ ափի ու Մեծրաց լեռների միջև: Գաբեղյան նախարարական տան սեփականությունն էր Այրարատի 2-րդ գավառ Գաբեղյանքը, որն ընդգրկում էր այժմյան Կաղզվանի շրջանը:*

*12. Արծրունիների նախարարական տան ժառանգական հայրենիքն էր Աղբակ գավառը:*

*13. Հաղամակերտը Արծրունիների տան ոստանն էր, այժմ՝ Բաշ-Կալե:*

*14. Ն. Ադոնցի կարծիքով, Գնունիների տան ժառանգական հայրենիքն ընդգրկել է Առբերանի գավառը, Աղիովիտ և Արճիշակովիտ գավառների մի մասը: Գնունիները տոհմական կալվածքներ ունեին նաև Շիրակում:*

*15. Նկատի ունի Ասորեստանի թագավոր Սենեքերիմին (Սինախերիբ), որը թագավորել է Ք. ա. 705-681 թվականներին: Հայ ավանդական պատմագրությունը Արծրունիներին ու Գնունիներին վերագրում է ասորեստանյան ծագում:*

*16. Սպանդունի նախարարական տան անվանումը, ըստ երևույթին, առաջացել է Սպանդարատ անձնանվան կրճատ ձևից, որը տարածված էր Կամսարականների ընտանիքում: Ն. Ադոնցը գտնում է, որ Սպանդունիները Կամսարականների չառավիղներն էին:*

*17. Հավունիների տան ժառանգական կալվածքը Բասենի Հավնունիք գավառն էր՝ Երասխի հարավային կողմում:*

*18. Ձյունական նախարարական ընտանիքի տոհմական կալվածքները, ըստ Ն. Ադոնցի, գտնվում էին Արագածի փեշերին՝ Գնթունիների հարևանությամբ:*

*19. Հին Հայաստանում Ոստան է կոչվել արքունիքին, ինչպես նաև խոշոր նախարարական ընտանիքներին պատկանող երկիրը կամ քաղաքը: Համապատաս - խանաբար ոստանիկներ էին կոչվում արքունի այս երկրից ծագած ազնվականներն ու վերջիններիցս կազմված զորագնդերը:*

*20.* ***Սեփեծուլ*** *- վրացերեն բառ է, որը բառացիորեն նշանակում է՝ սեփե (թագավոր) և ծուլի (որդի), այսինքն՝ արքայազն, արքայորդի: Ն. Մառի կարծի - քով, վրացերեն սեփե (թագավոր) բառը ծագել է հայերեն սպուհ բառից:*

*21. Այստեղ Պատմահայրը նկատի ունի Մարդպետունի նախարարական տան նահապետին: Այս ընտանիքի ձեռքում էր գտնվում մարդպետություն գոր - ծակալությունը, որի պարտականությունն էր հսկել թագավորական կալվածքներին, գանձերին, արքունի ամրոցներին և թագավորական կանանոցին: Մարդպետունի տոհմը իշխում էր Մարդպետական գավառում, որը կազմում էր Վասպուրականի հյուսիսարևելյան մասը, ներառյալ նաև Նախիջևանի գավառը:*

*22. Ըստ Խորենացու, Մուրացյանների նախարարական տան կալվածքները գտնվում էին Մասիսի ստորոտներում:*

*23. Ըստ Խորենացու, հայոց նահապետների ազգացուցակում Սիսակը*

*հետևյալ տեղն էր զբաղեցնում՝ Հայկ, Արամանյակ, Արամայիս, Ամասիա, Գեղամ, Սիսակ:*

*24. Կադմոսը Հայկի թոռներից էր, Արամանյակի որդին:*

*25. Տե՛ս գիրք Ա, գլ. ԺԲ:*

*26. Խորենացին Հայկազյան Առանի անվան հետ է կապում Մեծ Հայքի արևելյան երկրամասերից մեկի՝ Առանի անվանադրումը: Առան երկրամասը հնում ընդգրկում էր Խաչեն ու Տրտու գետերի միջին և ստորին ավազանները:*

*27. **Հնարակերտ** (Հունարակերտ) – ամրոց և քաղաք Խրամ գետի ափին՝ Մեծ Հայքի, Վիրքի և Աղվանքի սահմանների հատման կետում:*

*28. Ուտեացիների ազգատոհմի անունից է ծագել Մեծ Հայքի 12-րդ նահանգ Ուտիքի անվանումը:*

*29. Գարդմանացիների նախարարական տան ժառանգական սեփականությունն էր Ուտիքի 6-րդ գավառ Գարդմանը, այժմյան Ղազախի շրջանը:*

*30. Գարգարացվոց տիրույթները գտնվում էին Գարգար գետի հովտում, այժմյան Միլի դաշտում:*

*31. Ըստ Խորենացու Հայոց նահապետների տոհմացանկի, Շարան Արամայիսի որդին էր՝ Արամանյակի թոռը:*

*32. Մթին լեռը նույնացվում է Կանգարաց լեռներին: Մթին անունը պահպանվել է այժմյան Մթնաձոր կամ Խավարաձոր անվան մեջ:*

*33. Կողբը (Կողբոփոր), Ծոբը (Ծոբոփոր) և Ձորը (Ձորոփոր) Գուգարքի 3-րդ, 2-րդ և 1-ին գավառներն էին, որոնք հերթականությամբ համապատասխանում են այժմյան Նոյեմբերյանի, Շուլավերի ու Թումանյանի շրջաններին:*

*34. Աշոցքը Այրարատի 14-րդ գավառն է, այժմյան Աշոցքի շրջանը:*

*35. **Տաշիրք** (Տաշիր, Տաշրատափ) – Գուգարքի 4-րդ գավառն է, համապատասխանում է այժմյան*



**Ապարանի հունարեն արձանագրությունը**

*Ստեփանավանի, Տաշիրի շրջաններին և Թումանյանի շրջանի հարավային մասին:*

*36. Գուգարքը Մեծ Հայքի չորս բդեշխություններից մեկն էր:*

*37. Նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացուն:*

*38. Խոսքը Բաբելոնի թագավոր Նաբուգոդոնոսորի (605-562) մասին է:*

*39. **Աբյուդենոս** - մատենագիր, որը գրել է Ասորեստանի և Քաղդեայի պատմությունները, որոնք, սակայն, մեզ չեն հասել:*

*40. **Իվերիացիների երկիր** - այստեղ պատմագիրը նկատի ունի Իսպանիայում գտնվող Իբերիա երկրամասը:*

*41. Այսինքն՝ Կովկասյան Իբերիայում (Վիրք):*

*42. Անգեղ տուն գավառը գտնվում էր Աղձնյաց բդեշխության կազմում: Խորենացին այս գավառի անվանադիր նախնու՝ Տորք Անգեղի անունը ստուգաբանել է որպես «տգեղ, անգեղեցիկ»: Այժմ համարվում է, որ այս անունը առաջացել է Անգեղ հայկական աստվածության անունից, որն ունի տոտեմական (թռչուն) ծագում. Տորքը նույնպես եղել է աստված և հանդիսացել է պտղաբերության ու բուսականության հովանավորողը: Նրա պաշտամունքը հատկապես տարածված է եղել Հայաստանի հարավարևմտյան շրջաններում՝ հետագայի Անգեղ տուն գավառում:*

*43. Ռոստոմ Սագճիկը Իրանի ժողովրդական հերոսներից է, որին գովերգել է Ֆիրդուսին:*

*44. **Չորրորդ Հայք** (Ծոփաց կողմն) - Մեծ Հայքի 2-րդ նահանգն է, որն ընդգրկում էր նախկին Ծոփաց թագավորությունը:*

*45. Ապահունյաց նախարարության ժառանգական տիրույթը Տուրուբերանի 14-րդ գավառ Ապահունիքն էր, համապատասխանում է այժմյան Մանազկերտի սանջակին:*

*46. Մանավազյան նախարարական տան ժառանգական տիրույթը Տուրուբերանի 9-րդ գավառ Հարքն էր, համապատասխանում է այժմյան Բուլանըղին:*

*47. Բզնունիների տան ժառանգական տիրույթը Տուրուբերանի 11-րդ գավառ Բզնունիքն էր:*

*48. Սլկունիների ժառանգական հայրենիքն էր Տուրուբերանի 3-րդ գավառ Տարոնը:*

*49. Մանդակունիների նախարարական տան հայրենիքն էր Տուրուբերանի 4-րդ գավառ Արշամունիքը՝ Բյուրակն (Բինգյոլ-սու) գետի հովտում:*

*50. Վահունիների տոհմական կալվածքը Տարոնի արևմտյան մասն էր՝ Աշտիշատ կենտրոնով:*

*51. Առավենյանների նախարարական տան կալվածքը, Ն. Ադոնցի կարծիքով, գտնվում էր Այրարատ նահանգում, ավելի ստույգ՝ Շիրակում: Սակայն փաստերն այդ մասին այնքան կցկտուր են, որ դժվար է որևէ բան պնդել:*

*52. Զարեհավանյանների նախարարական տոհմի ժառանգական հայրենիքը, ըստ Ս. Երեմյանի, Պարսկահայքի 7-րդ գավառ Զարեհավանն էր:*

*53.* ***Սանասար*** *– ըստ ավանդության, սա Ասորեստանի Սենեքերիմ թագավորի որդին էր, որը սպանելով հորը, ապաստան գտավ Արարադի երկրում:*

*54. Այսինքն՝ Աղձնիքը, որը Մեծ Հայքի չորս բդեշխություններից մեկն էր:*

*55.* ***Կղեսուր*** *– նշանակում է «լեռնանցք»:*

*56. Մոկաց նախարարական տան ժառանգական սեփականությունը Մեծ Հայքի 5-րդ նահանգ Մոկքն էր:*

*57. Կորդվացիների երկիրը Մեծ Հայքի 6-րդ նահանգ Կորճայքն էր, որ միաժամանակ նաև բդեշխություն էր:*

*58. Անձևացյաց նախարարական տան հայրենիքի էր Վասպուրականի Անձևացիք գավառը:*

*59. Ակեացիների ժառանգական տիրակալությունն էր Վասպուրականի Ակէ գավառը:*

*60. Ռշտունիների նախարարական տան ժառանգական հայրենիքն էր Վասպուրականի 1-ին գավառ Ռշտունիքը:*

*61. Գողթնը Վասպուրականի 33-րդ գավառն էր, որը համապատասխանում է հետագայի Ապրակունիսի և Օրդուբադի շրջաններին:*

*62. Ըստ Խորենացու, Մծբինը Վաղարշակի արքայանիստ քաղաքն էր:*

*63.* ***Հաշտյանք*** *– Չորրորդ Հայքի 2-րդ գավառն է, համարվում էր Հայոց Արշակունիների տան սեփականությունը:*

## ԳԱՌՆԻԻ ՀՈՒՆԱՐԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

***Գառնիի հունարեն արձանագրությունը հայտնաբերվել է 1945 թ. տեղի գերեզմանատան տարածքում, Մարտիրոս Սարյանի կողմից: Արձանագրությունը սկզբնապես գտնվելիս է եղել բերդապարսպի շարվածքում: Արձանագրության պահպանված մասն ունի 109 սմ երկարություն և 52 սմ բարձրություն: Արձանագրությունը բաղկացած է ինը տողից, տառերի բարձրությունը 5,5 սմ է: Ժամանակի ընթացքում որոշ տառեր հողմահարվել են, քարի աջակողմյան վերջավորությունը կոտրված է, որով բոլոր տողերի վերջավորությունները (աջ մասից) բացակայում են:***

***Սույն արձանագրությունը կատարված է Գառնիի ամրոցի նորոգման առթիվ: Այստեղ հիշատակված են Հայոց թագավոր Տրդատ I-ը (Հ. Մանանդյանի կարծիքով՝ Տրդատ III-ը), իր տիտղոսներով, շինարարության օբյեկտը և թվագրումը՝ ըստ թագավորի իշխա-***

*նության տարիների: Արձանագրության երկրորդ մասում (6–9-րդ տողերը) հիշատակված են ոմն Մեննեաս, որն իր վրա է վերցրել թագավորական ամրոցի նորոգման ծախսը և գործարքին ներկա վկայի՝ Մատե անունով մեկի անունը: Արձանագրության այս երկրորդ կեսը առավել առեղծվածային է և, հակառակ ուսումնասիրողների ջանքերի, դեռևս բավարար վերծանված չի կարող համարվել:*

*Արձանագրության վերծանությամբ զբաղվել են՝ Ս. Լիսիցյանը, Հ. Մանանդյանը, Ա. Աբրահամյանը, Բ. Առաքելյանը, Կ. Տրևերը, Գ. Սարգսյանը, Հ. Բարթիկյանը և Ս. Կրկյաշարյանը: Նման բուռն հետաքրքրությունը բացատրվում է նրանով, որ արձանագրությունը անգնահատելի նշանակություն ունի հին Հայաստանի քաղաքական ու մշակութային պատմության, ինչպես նաև սոցիալ-տնտեսական հարաբերություններին առնչվող բազմաթիվ հարցերի ուսումնասիրության համար:*

*Արձանագրության ստորև բերված տեքստը տալիս ենք Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ:*

*1. Հելիոս[1] Տիրիդատես[2] թագավոր*
*2. Մեծ Հայքի, թագավորելով*
*3. իբրև դեսպոտ[3] (վեհապետ), կառուցեց[4] պայծառափայլ*
*4. թագուհու համար անհաղթահարելի ամրոցը*
*5. ԺԱ (11-րդ ) տարում[5] իր թագավորության...:*
*6. Մեննեասը[6] տիրոջ արտոնությամբ [իբրև]*
*7. լիտուրգոս[7] մեծ սպահպետի[8],*
*8. ի նշան շնորհակալության,*
*9. Մատե[9] վկայի ներկայությամբ [գնեց]:*

*1. **Հելիոս** – բառացիորեն նշանակում է «արև» և գուցե մատնանշում է Տրդատ I-ի քրմական պարտավորությունը (տե՛ս **Տակիտոս**, Տարեգրություններ, XV, 24), քանի որ Տրդատը Արևելքում լայն տարածում գտած Միթրա (Միհր), որը նույնացվում է Ապոլլոն-Արևի հետ, աստվածության քուրմ պիտի լիներ: Մյուս կողմից էլ հայկական Տիր (Տիրան) աստվածը նույնացվում է Ապոլլոնի հետ, ուստի այս Հելիոսը կարող է լինել Տիրան կամ Տրդատ հայերեն անվան հունարեն թարգմանությունը, որպես Տրդատի տիտղոսը կամ հավելյալ անունը իբրև քրմի: Կարծիք կա նաև, որ Տրդատ I-ը, ժամանակի սովորությամբ աստվածացվելով, նույնացվել է Հելիոս (Արև) – Ապոլլոն-Տիր աստծու հետ, ուստի և արձանագրության մեջ անվանվում է նաև Հելիոս:*

*2. Որոշ հետազոտողներ (Հ. Մանանդյան և այլք) արձանագրությունում հիշատակված սույն Տրդատին փորձում են նույնացնել Տրդատ III Մեծի հետ:*

*3. **Դեսպոտ** – անսահմանափակ իշխանությամբ օժտված միապետ:*

*4. Այստեղից չպետք է եզրակացնել, թե Տրդատ I-ն է կառուցել Գառնիի ամրոցը: Տակիտոսի հաղորդումներից մենք գիտենք, որ I դարի 40-50-ական թթ. Գառնիի ամրոցը արդեն գոյություն ուներ (տե՛ս **Տակիտոս**, Տարեգրություններ, XII, 45): Հետևաբար, այստեղ խոսք կարող է լինել միայն Տրդատ I-ի կողմից ամրոցի վերակառուցման մասին:*

*5. **«11-րդ տարում»** – ուսումնասիրողների ճնշող մեծամասնությունը գտնում է, որ այս թվականը համապատասխանում է Գառնիի ամրոցի վերակառուցման շինարարական աշխատանքների թվականին, այսինքն՝ Տրդատ I-ի գահակալության (66 թ.) 11-րդ տարին, որը կլինի 76 թվականը:*

*6. **Մեննեաս** – հունականացված հայկական անուն է, որը, ուսումնասիրողների կարծիքով, Ամատունի նախարարական տան մեջ լայն տարածում գտած Մանե, Մանուեայ (սեռական հոլ.) տոհմանունն է:*

*7. **Լիտուրգիա** – ծառայություն, որը կատարվում է հասարակական կարգով, անվճար: Լիտուրգոս էր կոչվում այն անձնավորությունը, որը կատարում էր որևէ լիտուրգիա, այսինքն՝ այն ծառայությունը (ռազմանավերի շինարարություն, շինարարական աշխատանքներ, թատերախմբերի ֆինանսավորում, հարկերի գանձում և այլն), որը անտիկ աշխարհում, այս կամ այն պոլիսում, իր իսկ միջոցներով կատարում էր որևէ ունևոր քաղաքացի՝ քաղաքային համայնքի կամ ընդհանրապես պետության օգտին: Միապետության պայմաններում լիտուրգիայի ինստիտուտը պիտի կրեր մեծ փոփոխություններ, այս ժամանակաշրջանում արդեն թագավորն ինքը այս կամ այն ծառայությունը՝ լիտուրգիան, հանձնարարում էր այս կամ այն անձնավորությանը: Տվյալ դեպքում Մեննեասին, հավանաբար, հանձնարարված է եղել Գառնիի ամրոցի վերակառուցման աշխատանքների ֆինանսավորումը:*

*8. Այսինքն՝ սպարապետի:*

*9. Որոշ հետազոտողներ Մատե անձնանվան մեջ փորձում են փնտրել [Ա]մատ[ունի] նախարարական տան հորջորջումը:*

## ԱՊԱՐԱՆԻ ՀՈՒՆԱՐԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

***Սույն արձանագրությունը հայտնաբերվել է 1908 թ. Բաշ-Ապարանում, Գարեգին Հովսեփյանցի կողմից: Այժմ այն պահվում է Հայաստանի պատմության պետական թանգարանում: Քարի արձանագրությունը կրող մասն ունի 70 սմ բարձրություն և 45 սմ լայնություն: Արձանագրության ստորին մասը ջարդված է, որի պատճառով էլ արձանագրությունը թերի է: Այն բաղկացած է եղել տասից ավելի***

*տողերից, որոնցից այժմ նկատելի են միայն ինը: Քարի արձանագրու-թյուն կրող երեսը հողմահարված է, տառերը աղճատված են և դժվար են ընթերցվում, իսկ աջ եզրը առավել մաշված է, որի պատ-ճառով էլ տեքստը լրիվ չի վերծանվում:*

*Արձանագրությունում հիշատակված է Մեծ Հայքի թագավոր Տր-դատը (I-ը, II-ը կամ III-ը) իր տիտղոսներով հանդերձ, որը, ինչ-որ ծառայության կամ գործակալության դիմաց, Գնթունիների նախա-րարական տոհմին շնորհում է Նիգ քաղաքը:*

*Արձանագրությունը առաջին անգամ ընթերցել է Մ. Ռոստովցևը, այնուհետև նրան անդրադարձել են Հ. Մանանդյանը, Կ. Տրևերը, Բ. Առաքելյանը, Ս. Կրկյաշարյանը և ուրիշներ: Ստորև բերված տեքս-տը տալիս ենք Ս. Մ. Կրկյաշարյանի թարգմանությամբ:*

*1. Տիրիդատես[1]*
*2. Մեծը, Մեծ*
*3. Հայքի թագա-*
*4. վորը տվեց*
*5. Գնթունու (տոհմից)[2]*
*6. Հռողոմիթրի[3]*
*7. Որդուն հուտեստ[4] (՞)*
*8. Նիգ[5] նորաքաղաքը*
*9. ... փետրվարի[6] ...:*

*1. **Տիրիդատես** (Տրդատ) – որոշ ուսումնասիրողներ (Մ. Ռոստովցև, Հ. Մա-նանդյան և այլք) կարծում են, որ այստեղ խոսքը Տրդատ III Մեծի (298-330) մա-սին է: Կ. Տրևերը մերժում է այս տեսակետը և գտնում, որ այն վերաբերում է Տրդատ II-ին (217-252): Սակայն արձանագրության հնագրական տվյալները հուշում են, որ այն ավելի շատ վերաբերում է Տրդատ I-ին՝ Արշակունյաց թագա-վորական հարստության հիմնադրին:*

*2. Այստեղ տառերը հողմահարված լինելու պատճառով հնարավոր չէ վերծա-նել պարզև ստացող Գնթունու անունը:*

*3. **Հռողոմիթր** – Հայ իրականության մեջ այսպիսի անուն կրող անձնավորու-թյուն այլևս չի հանդիպում: Ս. Կրկյաշարյանի կարծիքով այս անունը Վարդ-Միհր անվան հունարեն թարգմանությունն է:*

*4. Ամենայն հավանականությամբ, Նիգը տրվում էր Գնթունիներին հուտեստ՝ արքունիքում նրանց վարած գործակալության պաշտոնի դիմաց: Խորենացու մի հաղորդման համաձայն, Գնթունիները Հայոց Արշակունիներին զգեստներ էին հագցնում («Պատմություն Հայոց», գիրք Բ, գլ. Է):*

*5. Նիգը տեղադրվում է այժմյան Ապարանի տեղում. այն Գնթունի նախարարական տան տոհմակալվածքն էր:*

*6. Փետրվար ամսանունից հետո արձանագրությունը պարունակել է նաև տարեթիվը, սակայն, դժբախտաբար, այն խիստ հողմահարված է և այժմ չի ընթերցվում:*

## Ք. Ա. 72-74 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԱԼԱՆՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԴԵՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ ԸՍՏ ՀՈՎՍԵՓՈՍ ՓԼԱՎԻՈՍԻ

### *ՀՐԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ*

### ***Գիրք յոթերորդ***

244 *Իսկ ալանաց ազգը[1], որը բնակեցրել է Տանայիս գետի[2] և*
*Մեոտիս լճի շրջակայքը, սկյութացիներ են...: Ահա նրանք այդ*
245 *ժամանակները նպատակ ունենալով արշավել Մեդիա և նրա-*




***Արտաշատ մայրաքաղաքի դրամը***
***(Ք. Հ. II դար)***

*նից ավելի այն կողմ ընկած այլ վայրեր ավարառության*
*համար, համաձայնության են գալիս հյուրկանների[3] թա-*
*գավորի հետ, որը տերն էր այն անցուղու, որ Ալեքսանդր*
*(Մակեդոնացի) թագավորը փակել էր երկաթյա ամուր*
246 *դարպասներով[4]: Ու քանի որ այդ մուտքը նրանց տրամադրեց,*
*ապա նրանք հոծ բազմությամբ հարձակվեցին մեդացիների*
*վրա, որոնք ոչինչ չէին կասկածում, և ավարի մատնեցին*
*բազմամարդ և ամեն տեսակ անասուններով հարուստ երկիրը,*
247 *իսկ ոչ ոք չհամարձակվեց նրանց դիմադրել: Որովհետև այդ*
*երկրում թագավորող Պակորոսը[5] սարսափահար ապաստանել*
*էր դժվարամատույց վայրեր, մնացած ամեն ինչը նրանց*
*գիջելով, նրանցից կարողացավ հազիվ իր կնոջն ու հար-*

*ճերին,որոնք գերի էին ընկել, հարյուր տաղանդ (փրկագին)*
248 *վճարելով ազատել: Շատ հեշտությամբ և առանց մարտի*
*կողոպուտի ենթարկեցին երկիրը մինչև Հայաստան ու վե-*
249 *րադարձան ամեն ինչ թալանելով: Իսկ (Հայաստանում) թա-*
*գավորում էր Տիրիդատեսը[6], որը ռազմերթի ելնելով նրանց*
*դեմ, ճակատամարտ տվեց, բայց քիչ էր մնացել, որ կռվի*
*ընթացքում նրանց ձեռքը գերի ընկներ կենդանի: Որովհետև*
250 *(ալաններից) մեկը հեռվից պարան ձգեց նրա վրա և նրան*
*արդեն կբռներ, եթե (Տիրիդատեսին) չհաջողվեր իր սրով*
*իսկույն կտրել պարանը և անհապաղ ճողոպրել: Մինչդեռ*
251 *ալանները այդ կռվի (ելքից) ավելի ևս գազազած, երկիրը*
*թալանեցին և երկու թագավորներից էլ մարդկանց մեծ*
*բազմություն և ուրիշ շատ ավար տանելով, նորից վե-*
*րադարձան իրենց երկիրը:*

*1. **Ալաններ** – Հյուսիսային Կովկասի վաչկատուն ցեղեր. նույնացվում են օսե-րի հետ: Սրանք հաճախ անցնելով Կասպից և Ալանաց դռներով, ներխուժում էին Անդրկովկաս, Ատրպատական և Հայաստան: Ալանների սույն թալանչիական արշավանքը տեղի է ունեցել 72–74 թվականներին:*

*2. **Տանայիս** – Դոն գետի անվանումը անտիկ հեղինակների մոտ:*

*3. **Հյուրկանիա** (Հիրկանիա) – հայկական աղբյուրների Վրկանից աշխարհն է. տեղադրվում է Պարսկական թագավորության հյուսիսարևելյան ծայրամասում՝ Անդրկասպյան շրջաններում:*

*4. Խոսքը, ըստ երևույթին, վերաբերում է հայկական աղբյուրների «Դրունք Կասպից» լեռնանցքին, որը տեղադրվում է այժմյան Ղարադաղի լեռներում՝ Կասպից ծովի արևմտյան առափնյա շրջաններում:*

*5. **Պակորոս** – Պարթևաց Վաղարշ I թագավորի և Հայոց Տրդատ I թագավորի եղբայր Բակուրն է, որին Վաղարշ I-ը հաստատել էր Մեդիա-Ատրպատականի գահի վրա:*

*6. **Տիրիդատես** – պարթև Արշակունի Վոնոն II թագավորի (51 թ.) երրորդ որդին, եղբայրը Պարթևաց արքայից արքա Վաղարշ I-ի և Ատրպատականի թագավոր Բակուրի՝ «Մեծ թագավոր Հայոց մեծաց» Տրդատ I:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ II ԴԱՐՈՒՄ ԵՎ III ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ ԸՍՏ ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍԻ

## ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### Գիրք վաթսուներորդ

17,1 *Այնուհետև նա[1] ռազմերթի ելավ հայերի և պարթևների դեմ այն պատրվակով, որ հայոց թագավորը[2] թագը ոչ թե իրենից էր ստացել, այլ պարթևների թագավորից[3]. մինչդեռ իրականում նա տոգորված էր խիստ փառամոլությամբ:*

2 *Եվ որովհետև (Պարթևին)[4] հայտնի էր, թե նա հարձակվելու է և դրանով իսկ պատրաստ է իրագործելու իր սպառնալիքները, խիստ վախեցավ և մեղմելով իր գոռոզությունը, (դեսպաններ) ուղարկեց[5], աղերսելով նրան չպատերազմել իր դեմ. միաժամանակ խնդրում էր նրան, որ Հայաստանը տրվի Պարթամասիրիսին, որը նույնպես Պակորոսի[6] որդին էր, և թախանձում, որ թագն ուղարկվի սրան: Քանզի, ասում էր նա,*

3 *Եքսեդարեսին[7], որը հարմար չէր ոչ հռոմեացիներին, ոչ էլ պարթևների համար, ինքը գահընկեց էր արել: Իսկ (Տրայանոսը) ոչ ընծաներն ընդունեց, ոչ էլ որևէ բանավոր պատասխան տվեց կամ նամակ ուղարկեց. այլ հայտնեց միայն, որ բարեկամությունը որոշվում է գործերով և ոչ թե խոսքերով. հետևաբար, երբ ինքը ժամանի Սիրիա, պատշաճ ամեն ինչ կանի:*

* * *

19,1 *Պարթամասիրիսը կամայական մի բան կատարեց: Տրայանոսին ուղարկած իր առաջին նամակը նա հղել էր իբրև «Հայաստանի թագավոր», բայց քանի որ պատասխան չստացավ, ապա նորից նամակ ուղարկեց, բայց այդ տիտղոսը հանած, և խնդրեց իր մոտ ուղարկել Մարկոս Յունիոսին՝ Կապադովկիայի կառավարիչին, որպեսզի նրա միջոցով իր*

2 *խնդրանքը հաղորդի: Սակայն Տրայանոսը նրա մոտ ուղարկեց Յունիոսի որդուն, մինչդեռ ինքը առաջ ընթացավ մինչև Արսամոսատա[8] և այն առանց կռվի վերցնելով, եկավ Սատալա[9] և Անքիալոսին՝ հենիոքների ու մաքելոնների[10] թագավորին, ընծաներ ուղարկեց: Նա Հայաստանի Ելեգեայում[11] ընդունեց Պարթամասիրիսին: (Կայսրը) նստած էր պատնեշի*

3 *եզրին կանգնեցրած բեմի վրա: Եվ (Պարթամասիրիսը) ողջու-*

նելով նրան, գլխից թագը հանեց ու դրեց նրա ոտքերի մոտ, լուռ կանգնեց, սպասելով, որ նա կվերցնի այն[12]: Երբ այս բանի վրա զինվորները մեծ աղաղակ բարձրացրին և Տրայանոսին, որպես ինչ-որ հաղթություն տանելու համար կոչեցին իմպե-
4 րատոր - քանզի նրանք առանց կարոսի[13] անարյուն հաղթանակ էին համարում այս, երբ տեսան որ Արշակունի թագավորը՝ Պակորոսի որդին, Օսրոեսի[14] եղբորորդին, կանգնած է (կայսեր) առաջ առանց թագի, որպես գերեվարված - (Պարթամասիրիսը), ահաբեկվեց և կարծեց, թե ինքը ծանակվում է
5 և մատնվելու է կորստի: Նա չուռ եկավ և ուզեց փախչել, բայց տեսնելով, որ ինքը շրջապատված է, խնդրեց շնորհ անել, որ ամբոխի առաջ չխոսի: Եվ այսպիսով, նա ներս տարվեց վրանը,
20,1 սակայն դարձյալ չկարողացավ անել այն, ինչ ցանկանում էր: Եվ երբ նա զայրացած դուրս եկավ զորաճամբարից, Տրայանոսը ետ կանչել տվեց նրան և նորից բարձրանալով բեմ, հրամայեց, որ նա ի լուր բոլորի ասի այն ամենը, ինչ կամենում է, որպեսզի մարդիկ, անգետ լինելով իրենց երկուսի միջև առանձին խոսվածներին, այդ մասին չտան զանազան հնարովի տեղեկություններ: Այս լսելով, Պարթամասիրիսն այլևս չկարողացավ լռել, այլ խոսեց մեծ համարձակությամբ և, իմիջիայլոց, ասաց, որ ինքը ոչ (պատերազմում) պարտվել է, ոչ գերի է վերցվել, այլ եկել է կամավոր կերպով, հավատացած լինելով, որ ինքը ոչ մի վիրավորանք չի կրի և կստանա թագավորությունը, ինչպես որ Տիրիդատեսն ստացել էր Ներոնից:
3 Տրայանոսը նրա բոլոր ասածներին պատշաճ կերպով պատասխան տվեց և ասաց, որ Հայաստանը ոչ ոքի չի տալու - քանզի այդ երկիրը պատկանում է հռոմեացիներին և ունենալու է հռոմեացի կառավարիչ - իսկ իրեն թույլ կտա գնալ ուր որ
4 կամենում է: Այսպես Պարթամասիրիսին և նրան ընկերակցող պարթևներին նա բաց թողեց, տալով նրան հեծյալ ուղեկիցներ, որպեսզի ոչ մեկի հետ չբանակցեն և որևէ խռովություն չբարձրացնեն: Իսկ նրա հետ եկած բոլոր հայերին հրամայեց մնալ իրենց գտնված երկրում, քանի որ նրանք այժմ իր հպատակներն էին:

### Հատված յոթանասունհինգերորդ գրքից

9,6 Երբ Վոլոգեսոսը՝[15] Սանատրուկեսի[16] որդին, պատրաստվել

էր Սևերոսի[17] զորքի դեմ ճակատամարտելու և ընդհարումից առաջ զինադադար էր խնդրել և կնքել, (Տրայանոսը) նրա մոտ դեսպաններ ուղարկեց և Հայաստանի մի մասը[18] շնորհեց նրան՝ խաղաղության առթիվ:

## Գիրք յոթանասունմեկերորդ

3,6 Մարտիոս Վերոսն[19] ուղարկել էր Թուկիդիդեսին, որպեսզի նա Սոեմոսին[20] վերստին բերի Հայաստան: Սա զենքի սպառնալիքով, ինչպես և իրեն հանդիպողների նկատմամբ բոլոր դեպքերում ցուցաբերած բարեմտության շնորհիվ, արագ թափով առաջ էր ընթանում: ... Արդ՝ (Մարտիոսը) գալով Նոր քաղաք[21], որն իր ձեռքում պահում էր Պրիսկոսի դրած հռոմեական կայազորը, ապստամբության փորձ անողներին թե՛ խոսքով և թե՛ գործով հնազանդեցնելուց հետո հայտարարեց, որ (այդ քաղաքը) կլինի գլխավորը Հայաստանում:

## Գիրք յոթանասուներկուերորդ

14,2 Նույնպես և Տիրիդատես սատրապին[22], որը Հայաստանում խռովություններ էր բարձրացրել և սպանել էր հենիոքների թագավորին և իր սուրը թափահարել էր (Մարտիոս) Վերոսի վրա, երբ վերջինս հանդիմանել էր նրան այդ բաների համար, (Մարկոս Ավրելիոսը)[23] չսպանեց, այլ ուղարկեց Բրետանիա:

## Գիրք յոթանասունութերորդ

1[2] Արդ՝ (Անտոնինոսը)[24] խաբելով Օսրոենեի Ավգարոս[25] թագավորին, համոզեց նրան իբրև բարեկամի գալ իր մոտ, որից հետո նրան ձերբակալելով կալանավորեց և այդպիսով Օսրոենեն, որը մնացել էր առանց թագավորի, հպատակեցրեց:
Իսկ Հայոց թագավորին[26], որը վեճի մեջ էր իր որդիների հետ, բարեկամական նամակներով նույնպես կանչեց, իբր նրանց
2 հաշտեցնելու պատրվակով, բայց սրանց հետ ևս վարվեց այնպես, ինչպես Ավգարոսի հետ: Սակայն հայերը չհանդուրժեցին նրան, այլ դիմեցին զենքի, ու այլևս նրանցից ոչ ոք երբևիցե ոչ մի բանում նրան չէր հավատում, այնպես որ նա գործով սովորեց, թե որքան վնասաբեր է կայսեր համար




**Արտաշիր I Սասանյան**

*խաբեությամբ վերաբերվել բարեկամներին[27]:*

* * *

18,1 *Այսպիսի գործեր կատարեց (Անտոնինոսը) Նիկոմեդիայում[28] ձմեռելու ժամանակ. նա մարզեց նաև մակեդոնական փաղանգը[29] և երկու շատ խոշոր մեքենաներ կառուցեց հայկական և պարթևական պատերազմների համար այնպես, որ դրանք քանդած վիճակում նավերի վրա կարողանար փոխադրել Սիրիա...:*

* * *

19,1 *Երբ նա[30] արշավեց պարթևների դեմ, այդ պատերազմը պատճառաբանեց նրանով, որ Վոլոգեսոսը[31], երբ ինքը նրանից պահանջեց Տիրիդատեսին[32] և նրա հետ ոմն Անտիոքոսի, նրանց չհանձնեց: Այս Անտիոքոսը կիլիկեցի էր և սկզբում իբրև թե կիլիկյան փիլիսոփա էր և դրանով պատերազմում մե-*
2 *ծապես օգնել էր զինվորներին. քանզի երբ զինվորները ցրտաշունչ ձմռան պատճառով հուսահատվել էին, նա կարողանում էր սրտապնդել նրանց՝ իրեն նետելով ձյան մեջ և թավալվելով դրա վրա: Ուստի և նա շատ դրամ և պատիվներ ստացավ թե՛ Սևերոսից և թե՛ Անտոնինոսից: Այս ամենից նա*

այնքան զորոզացավ, որ Հարեց Տիրիդատեսին և սրա Հետ միասին փախավ պարթև (թագավորի) մոտ:

* * *

21,1 Երբ պարթև (թագավորը) վախեցավ և Տիրիդատեսին ու Անտիոքոսին Հանձնեց (կայսրին), սա խիստ ևեթ Հրաժարվեց արշավանքից. բայց Թեոկրիտոսը, որին զորքով նա ուղարկել էր Հայերի դեմ, նրանց կողմից պարտության մատնվեց և ծանր դժբախտության մեջ ընկավ:

## Գիրք յոթանասունիններորդ

27,4 Այսուհանդերձ Հայոց (թագավորի) դեմ նրա[33] մղած պատերազմը ևս, ինչպես ասել եմ, դադարեց, երբ Տիրիդատեսը[34] ընդունեց Մակրինոսի կողմից իրեն ուղարկված թագը, ինչպես նաև մորը, որին Տարավտասը[36] տասնմեկ ամիս պահել էր բանտում, ինչպես նաև ստացավ այն ամբողջ ավարը, որ տարված էր Հայաստանից և բոլոր այն երկրները, որ նրա Հայրը[36] ձեռք էր բերել Կապադովկիայում. նա Հույս ուներ նաև ստանալու այն փողը, որ ամեն տարի ուղարկում էին Հռոմեացիները[37]:

## Գիրք ութսուներորդ

3,1 Շատ երկրներում շատ ապստամբություններ ծագեցին, և դրանցից մի քանիսը թեև խիստ աՀեղ էին, սակայն ճնշվեցին: Իսկ Միջագետքում կատարված դեպքերը առավել աՀավոր էին և իրականում սարսափ էին գցել բոլորի վրա. ոչ միայն
2 Հռոմի բնակիչների, այլև մյուս վայրերի: Քանզի ոմն Արտաքսերքսես[38], պարթևներին երեք ճակատամարտում Հաղթելուց և նրանց թագավոր Արտաբանոսին[39] սպանելուց Հետո, ռազմի ելավ Հատրայի[40] դեմ, այն (գրավելով) Հռոմեացիների դեմ իր Համար Հենարան դարձնելու նպատակով: Նա թեև կործանեց պարիսպը, բայց կորցնելով իր
3 զինվորներից շատերին, որոնք դարանի մեջ էին ընկել, ետ նաՀանջեց Մեդիա և, այս երկրում, ինչպես նաև Պարթիայում, մասամբ բռնությամբ, մասամբ էլ աՀաբեկմամբ գրավելով մի

*չարք շրջաններ, չարժվեց դեպի Հայաստան: Այստեղ նրան դիմավորեցին տեղի բնակիչները և մեղացիներից ոմանք, ինչպես նաև Արտաբանոսի որդիները և նա, ինչպես ոմանք ասում են, փախավ. իսկ ուրիշները ասում են, թե նա ետ քաշվեց, ավելի մեծ զորք պատրաստելու համար:*

*1. Խոսքը Տրայանոս կայսեր (98–117) մասին է, որը 113 թ. հոկտեմբերի 27-ին դուրս գալով Հռոմից՝ սկսեց իր արշավանքը դեպի Հայաստան:*

*2. Այստեղ Դիոնը նկատի ունի Մեծ Հայքի թագավոր Պարթամասիրին (113–114):*

*3. Խոսքը վերաբերում է պարթևական Խոսրով թագավորին (110–129):*

*4. Այսինքն՝ Խոսրովին:*

*5. Պարթևական դեսպանները Տրայանոսին ներկայացան Աթենքում:*

*6. Սա Պարթևաց Բակուր II թագավորն էր (78–110)՝ Հայոց թագավոր Պարթամասիրի հայրը:*

*7. **Եքսեդարես** – Մեծ Հայքի Աշխադար (Շիդար) թագավորն է (110–113)՝ որդին Պարթևաց Բակուր II-ի և ավագ եղբայրը Պարթամասիրի:*

*8. **Արսամոսատա** (Արշամաշատ) – Ծոփքի նախկին հայկական թագավորության մայրաքաղաքն էր, տեղադրվում է Արածանի գետի ափին՝ այսպես կոչված «Գեղեցիկ դաշտում»:*

*10. Մաքելոնների ու Հենիոքների թագավորությունը գտնվում էր Պարխարյան լեռների ծովահայաց փեշերին և հասնում էր մինչև Սև ծովի ափերը, այժմյան Ռիզեի և Աթինայի միջև (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. I, ԳԱ հրատ., էջ 785):*

*11. **Հայաստանի Ելեգեա** – Եղեգիսի ջերմուկներն են՝ Կարինից արևմուտք, այժմ՝ Իլիջա:*

*12. Այս տեսարանը քանդակվել է Տրայանոսի կոթողի վրա, որտեղից այն վերցնելով՝ հետագայում զետեղել են Կոստանդիանոս Մեծի հաղթակամարի վրա, որն այժմ էլ կարելի է տեսնել Հռոմում:*

*13. **Կարոս** – հյուսված պսակ, որով հին Հունաստանում զարդարում էին Իսթմական և Պյութիական խաղերում հաղթողներին:*

*14. Այսինքն՝ Պարթևաց թագավոր Խոսրովի:*

*15. **Վոլոգեսոս** (Վաղարշ) – Մեծ Հայքի Վաղարշ I թագավորն է (117–144): Նրա անվան հետ է կապված Վաղարշապատ քաղաքի հիմնադրումը:*

*16. Սա Հայոց Տրդատ I թագավորի որդի՝ Մեծ Հայքի թագավոր Սանատրուկն է (88–110), հայրը՝ Վաղարշ I-ի:*

*17. **Կատիլիոս Սևերոս** – Կապադովկիայի լեգատ: 114 թ. Տրայանոսի կողմից նշանակվել է նաև Փոքր Հայքի և Մեծ Հայքի կառավարիչ:*

*18. Հայաստանի այդ մասերը, ինչպես ենթադրում են ուսումնասիրողները, հյուսիսարևելյան Հայաստանն էր, որին հռոմեացիները չէին կարողացել հաստատուն կերպով տիրապետել: Վաղարշ I-ին ամբողջ Մեծ Հայքի թագավոր է ճանաչել Տրայանոսի հաջորդը՝ Հադրիանոս կայսրը (117–138):*

*19. **Մարտիոս Վերոս** – հռոմեական զորավար, Հայաստանում գտնվող հռոմեական բանակներից մեկի հրամանատար:*

*20. **Սոեմոս** (Սոհեմոս-Տիգրան) – թագավոր Մեծ Հայքի (144–161, 164–186): Սա Ասորիքի Էմեսա (այժմ՝ Հոմս) փոքրիկ քաղաքի թագավորն էր, Երվանդունիների հայկական թագավորական հարստության չառավիղ: 144 թ. Հռոմի կայսր Անտոնինոս Պիոսը (138–161) գահընկեց է հայտարարում Վաղարշ I-ին և Մեծ Հայքի թագավոր հռչակում Սոհեմոսին, որին տրվում է Տիգրան անունը: Սակայն, երբ պարթևները 161 թ. ներխուժեցին Հայաստան, Սոհեմոսը փախավ Հռոմ, որտեղ ընդունեց հռոմեական քաղաքացիություն և շուտով ընտրվեց Ծերակույտի (Սենատ) անդամ: Այդ ժամանակ Հայաստանում թագավոր հռչակվեց Բակուր Արշակունին (161–163): 164 թ. Սոհեմոսը Մարկոս Ավրելիոս կայսեր (161–180) կողմից վերստին հաստատվում է հայկական գահին:*

*21. **Նոր քաղաք** – Վաղարշապատ քաղաքն է, որը կառուցել է Հայոց Վաղարշ I թագավորը: Հռոմեացիներն այն անվանում էին Կայնեպոլիս, հայերեն՝ Նոր քաղաք:*

*22. Որոշ ուսումնասիրողներ այս Տիրիդատես սատրապին նույնացնում են հայ նախարար Տրդատ Բագրատունու հետ, որն ըստ Խորենացու՝ ապրել է II դարի կեսերին (տե՛ս «Պատմություն Հայոց», գիրք Բ, գլ. ԿԳ):*

*23. Սա Հռոմի կայսր Մարկոս Ավրելիոսն է:*

*24. Խոսքը վերաբերում է Անտոնինոս Կարակալլա կայսրին (211–217):*

*25. Սա Օսրոենե-Եդեսիայի թագավոր Աբգար X-ն է, որին Կարակալլան 215 թ. գերի վերցրեց, իսկ նրա երկիրն էլ հռչակեց հռոմեական պրովինցիա:*

*26. Դիոնը նկատի ունի Մեծ Հայքի թագավոր Խոսրով I Արշակունուն (198–210)՝ Հայոց Վաղարշ II թագավորի (186–198) ավագ որդուն:*

*27. Հայոց թագավոր Խոսրով I-ի ձերբակալությունն ու դրան հետևող Հայաստանում բռնկված հակահռոմեական հուժկու ապստամբությունը տեղի է ունեցել 216–217 թվականներին:*

*28. **Նիկոմեդիա** – Բյութանիական թագավորության մայրաքաղաքն էր, հետագայում՝ հռոմեական Բյութանիա պրովինցիայի կենտրոնը: Հիմնադրել է Նիկոմեդես I-ը՝ Ք. ա. 264 թվականին, այժմ՝ Իզմիթ:*

*29. **Փաղանգ** (Ֆալանգա) – հին հունական, մակեդոնական և մասամբ՝ հռոմեական բանակների մարտական շարվածք՝ քառանկյունի, զինվորների 8–24 շարքերով: Փաղանգի ճակատամասը հասնում էր մինչև 500–1000 մետրի՝ յուրաքանչյուր շարքում 1000-ական հոպլիտ: Մակեդոնական փաղանգը ունենում*

*էր մինչև 28.662 զինվոր:*

*30. Խոսքը Անտոնինոս Կարակալլա կայսեր մասին է:*

*31. Սա Պարթևաց Վաղարշ V թագավորն է (208-228):*

*32. Հ. Մանանդյանի կարծիքով, այս Տրդատը եղբայրն էր Պարթևաց թագավոր Վաղարշ V-ի:*

*33. Դիոնը նկատի ունի Հռոմի կայսր Մակրինոսին (217-218):*

*34. Սա հռոմեական բանտում մահացած Հայոց թագավոր Խոսրով I-ի ավագ որդի, Մեծ Հայքի թագավոր Տրդատ II Արշակունին էր (217-252), որին Կարակալլայի սպանությունից հետո, Հայաստանում հռչակել էին թագավոր:*

*35.* ***Տարավտաս*** *- Անտոնինոս Կարակալլա կայսեր մականունը:*

*36. Այսինքն՝ Հայոց Խոսրով I թագավորը:*

*37. Ուսումնասիրողների կարծիքով, այստեղ խոսքը գնում է դրամական այն նպաստի մասին, որ հռոմեացիները յուրաքանչյուր տարի վճարում էին հայկական հեծելազորի համար: Հայկական հեծելազորը այս նպաստը ստանում էր Կովկասյան լեռնանցքները պաշտպանելու համար:*

*38. Սա Արտաշիր I Պապական Սասանյանն է (224-241)՝ Պարսք երկրի արքայիկը, որը 224-227 թթ. ապստամբելով պարթևների դեմ՝ տապալեց նրանց տիրապետությունը Պարսկաստանում և այստեղ հիմք դրեց Սասանյանների թագավորական հարստությանը:*

*39.* ***Արտաբանոս*** *- Պարթևաց վերջին թագավոր Արտավան V-ն է (209-224):*

*40. Հատրա քաղաքը արաբական Հատրենե փոքրիկ թագավորության մայրաքաղաքն էր: Այս թագավորությունը գտնվում էր Եդեսիա-Օսրոենե և Ադիաբենե թագավորությունների միջև:*

## ՍԱՍԱՆՅԱՆ ՀԵՂԱՇՐՋՈՒՄԸ ՊԱՐՍԿԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԸՍՏ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ

***Ագաթանգեղոսի (V դ.) երկը Հայոց պատմագրության առաջնեկներից է: Այն կրում է «Պատմութիւն Հայոց» խորագիրը: Ընդգրկում է III-IVդդ. տեղի ունեցած իրադարձությունների նկարագրությունը՝ հատկապես Հայաստանում և նրա հարևան երկրներում քրիստոնեության տարածման և պաշտոնական ճանաչում գտնելու պատմությունը: Նրանում մեծ տեղ է հատկացված քրիստոնեության առաջին քարոզիչների, մասնավորապես Գրիգոր Լուսավորչի, գործունեության շուրջը հորինված ավանդություններին և հրաշապատումներին:***

***Պատմությունը V-VI դարերում ենթարկվել է զգալի փոփոխությունների. եկեղեցու հայրերն աշխատել են այն խմբագրել այնպես,***

***որ համապատասխանի իրենց ժամանակների կրոնադավանաբանական գաղափարախոսության պահանջներին։***

***Ագաթանգեղոսի Պատմության լավագույն հրատարակությունը Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանի կազմած քննական բնագիրն է (Թիֆլիս, 1909)։ Ագաթանգեղոսի բնագրի համառոտությունը հնում թարգմանվել է հունարեն, լատիներեն, արաբերեն, վրացերեն և այլ լեզուներով։ Աշխարհաբար է թարգմանել Ա. Տեր-Ղևոնդյանը, որը լույս է տեսել 1977 թ.՝ «Հայ մատենագիրներ» մատենաշարով։ Ստորև բերված հատվածները տրվում են ըստ 1983 թ. հրատարակության։***

*ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ*

*18. Երբ Պարթևների թագավորությունն իր վախճանին հասավ, վերացվեց Վաղարշի որդու՝ Արտավանի տերությունը և նա սպանվեց Սասանի որդի Արտաշիրի ձեռքով։ Սա մի նախարար էր Ստահր գավառից[1], որ գալով միավորեց պարսից զորքերը, որոնք լքեցին, հեռացան, մերժեցին ու անարգեցին պարթևների տերությունը և հաճույքով նախընտրեցին Սասանի որդի Արտաշիրի իշխանությունը։ Արդ, երբ այս մահվան գույժը հասավ Հայոց Խոսրով թագավորին[2], որը Պարսից տերության մեջ երկրորդն էր[3], քանզի նա, ով Հայոց թագավոր էր՝ Պարսից տերության մեջ երկրորդ [անձն] էր, - թեպետև նա վաղուց էր բոթը լսել, [այնուհանդերձ] ոչինչ կարողացավ անել պատերազմի պատրաստության գործը ավարտելու համար։ Դրանից հետո նա դարձյալ պատահած դեպքերի համար մեծ տրտմության մեջ էր, քանզի որևէ գործ չկարողացավ անել։ [Ուստի] կատարվածի համար մեծապես տրտմելով նորից անցավ, եկավ իր երկիրը։*

*19. Արդ՝ մյուս տարեմուտին Հայոց թագավոր Խոսրովը սկսեց բանակ կազմել և զորք գումարել։ Հավաքեց աղվանից ու վրաց զորքերը և բացեց Ալանաց ու Ճորա Պահակի դռները[4], դուրս բերեց հոների զորքը, ասպատակ սփռեց Պարսից երկիրը և արշավեց Ասորեստանի կողմերը մինչև Տիզբոնի դռները[5]։*

*24. Իսկ երբ Պարսից թագավորը տեսավ այս բոլոր չարիքները, որ նրա վրա հասան, նեղվեց, տառապեց, չփոթվեց, տարակուսեց, ինքն իր մեջ մոլորվեց։ Իր մոտ կանչեց տերության բոլոր թագավորներին, կուսակալներին, նախարարներին, զորավարներին, պետերին ու իշխաններին և խորհրդի նստեցին։ Աղաչում էր ամենքին, որևէ հնար*

*փնտրել գտնել. տեսակ-տեսակ պարգևներ էր խոստանում: «Թերևս գտնվի մեկը,- ասում էր նա,- որ կարողանա վրեժը լուծել»: Խոստանում էր շնորհել իր տերության երկրորդ գահը, եթե միայն որևէ մեկը կարողանար իր մեծ վրեժը լուծել: «Միայն աթոռովս ես վեր կլինեմ նրանից [ասում էր], թակուզ շատ անարգ մարդկանցից լինի, կամ թե պատվականներից»: Խոստանում էր ամեն տեսակ պատիվներ, պարգևներ և վարձի հատուցում շնորհել:*

*25. Արդ՝ այս խորհրդի մեջ ոտքի ելավ Պարթևանց տերության մի գլխավոր նահապետ, որի անունն էր Անակ, մեջտեղ գալով խոստացավ վրեժ առնել իր ազգակիցներից իբրև թշնամիներից:*

*28. Այն ժամանակ, Պարթևն իր եղբոր հետ պատրաստվեց համդերձ ընտանյոք, կանանցով, որդիներով, ամբողջ ունեցվածքով չարժվեցին, ճանապարհ ընկան և, զննելով ճանապարհները, ելան, գաղթելու պատրվակով գնացին Հայաստանի կողմերը, իբրև թե ապստամբվել էին Պարսից արքայի դեմ: Եկան հանդիպեցին Խոսրով թագավորին Ուտիք գավառի Խաղխաղ քաղաքում՝ Հայոց թագավորության ձմեռանոցում:*

*29. Հայոց թագավորը երբ տեսավ, ցնծությամբ ընդառաջ ելավ ու մեծ խնդությամբ ընդունեց նրան, մանավանդ, երբ սա կեղծավորությամբ ու դավով սկսեց խոսել նրա հետ և իր գալու հավատարմությունը ցույց տալ: «Այն բանի համար եմ քեզ մոտ եկել,- ասաց նա,- որ կարողանանք միատեղ ընդհանուրի վրեժը լուծել»:*

*30. Արդ՝ երբ թագավորը տեսավ այս մարդուն, որ եկել էր իր մոտ ամբողջ ընտանիքով, վստահորեն հավատաց նրան: Այնժամ նրան պատիվ տվեց ըստ թագավորական օրենքների, հանեց նստեցրեց իր թագավորության երկրորդ աթոռին և ձմեռվա ամբողջ ընթացքում՝ ցրտաշունչ, հողմաշունչ սառնամանիքի օրերը, ուրախությամբ անցկացրին:*

*31. Իսկ երբ հասան ջերմ օրերը, հարավահողմ գարնան դռները բացվելու ժամանակը, հեռացավ թագավորը այդ կողմերից: Եկան իջան Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը: Եվ մինչդեռ ուրախությամբ հանգստանում էին, թագավորը մտադրվելով զորք կազմեց՝ նորից Պարսից կողմերը արշավելու նպատակով:*

*32. Երբ Պարթևն այս լսեց, հիշեց այն երդումը, որ տվել էր Պարսից արքային: Հիշեց նաև պարգևների խոստումները և փափագեց իր բնիկ աշխարհը տեսնել, որը Պահլավ էր կոչվում, չար միտք հղացավ. իր հարազատ եղբոր հետ թագավորին մի կողմ տանելով՝ իբր թե զբոսանքի կամ նրա հետ խորհուրդ անելու նպատակով, և պող-*

*պատե սուսերները կես մերկացրած պահելով՝ հանկարծ անսպասելիորեն զենքերը բարձրացրին և թագավորին դիաթավալ անելով՝ գետին տապալեցին: Իսկույն եղած իրողությանը իրազեկ դառնալով՝ ամբոխը աղաղակով գույժ բարձրացրեց. մինչ այս, մինչ այն՝ նրանցից յուրաքանչյուրը իր երիվարը նստելով փախուստի դիմեց:*

*33. Հայակույտ զորքի մեծամեծները երբ այս իմացան, գունդ-գունդ բաժանվեցին ու հետապնդեցին: Ոմանք ցամաքով աճապարեցին հասնելու Արտաշատ քաղաքի դռների մոտակա կամուրջի գլուխը: Երասխ գետը հորդացած գալիս էր ափեափ լեցուն, սառնահալ, ջրակուտակ, ձյունախառն, ելման ջրերով իր վարարման շրջանում: Նրանց մի մասն անցավ Վաղարշապատ քաղաքի կամուրջով, որը կոչվում է նաև Մեծամորի կամուրջ: Աճապարում էին որքան կարելի է շուտ հասնել Արտաշատի կամուրջի գլուխը: Ճանապարհների կիրճերում կանգնեցրին նրանց և, շրջապատելով Տափերական կամուրջի մոտ, գետավեժ արեցին: Իսկ իրենք այնտեղից դարձան վայով, ճիչով ու ողբով, և ամբողջ երկիրը հավաքված թագավորին էր սգում:*

*34. Եվ քանի դեռ ջերմ շունչը նրա կրծքից չէր հեռացել, և չէր հասել վախճանը, [թագավորը] հրաման տվեց ոչնչացնել նրանց ազգատոհմը: Այնժամ սկսեցին սպանել ու կոտորել, մինչև իսկ չթողեցին մանուկներից այնպիսիին, որը բնավ աջն ու ձախը չգիտեր: Նաև տոհմի իգական մասը սրի քաշեցին: Միայն Պարթևի որդիներից երկու փոքրիկ մանուկների՝ մի մարդ [երեխաներից] մեկի դայակների միջոցով փրկեց, որոնցից մեկին փախցրեցին Պարսից կողմերը, իսկ մյուսին՝ Հունաց[6]:*

*35. Երբ Պարսից թագավորը այս ամենը լսեց՝ զվարճացավ, զվարթացավ, այն օրը ուրախության մեծ տոն արեց և ատրուշաններին շատ զոհ մատուցեց: Զորք հավաքեց, շարժվեց գնաց ասպատակ սփռեց Հայաստանի կողմերը, խոսունն ու անասունը, ծերն ու տղան, երիտասարդն ու մանուկը ընդհանրապես գերի տարավ[7]:*

*36. Այդ ժամանակ մի մարդ, ավազակից ազատելով, փրկում է Հայոց Խոսրով թագավորի որդիներից Տրդատ անունով մի փոքրիկ մանկան[8], [որին] դայակները առնելով փախցրին կայսեր արքունիքը, Հունաց կողմերը: Իսկ Պարսից արքան, գալով այնուհետև Հայաստան, իր անվամբ կոչեց այդ վայրերը և հունաց զորքը փախուստի մատնելով՝ հալածեց մինչև հունաց սահմանները: Փոսեր փորելով սահմաններ հաստատեց և տեղի անունը դրեց Փոսից դրունք[9] այն վայրերում, որոնք կոչվում էին Սույզն: Մնացած բնակիչներին տեղահանեց և երկրին տիրացավ:*

37. Արդ, Տրդատ գնաց Լիկիանես անունով մի կոմսի մոտ ու դաստիարակություն և ուսում ստացավ:

1. **Ստահր** – գավառ Աքեմենյանների Պերսեպոլիս մայրաքաղաքի մոտ, Պարսք նահանգում:

2. Ագաթանգեղոսը, ինչպես և Խորենացին (տե՛ս 481-րդ էջ, ծան. № 3) չփոթում են. հիշյալ դեպքերի ժամանակակից թագավորն էր ոչ թե Խոսրով I-ը, այլ վերջինիս որդի Տրդատ II-ը:

3. Նկատի ունի այն հանգամանքը, որ հայ Արշակունիները կրտսեր ճյուղն էին պարթև Արշակունիների:

4. Ալանաց դոները տեղադրվում են այժմյան Դարիալի կիրճի վայրում, իսկ Ճորա Պահակը (Կապան Ճորա, Դուռն Հոնաց, Դուռն Աղվանից)՝ այժմյան Դերբենդ քաղաքի մոտ, Կասպից ծովի ափին:

5. Ուսումնասիրողների կարծիքով, Ագաթանգեղոսի սույն վկայությունը հավաստի հիշողություն է:

6. Այսինքն՝ Բյուզանդիա: Անակի այս որդին ապագա Գրիգոր Լուսավորիչն էր:

7. Ուսումնասիրողները գտնում են, որ այս իրադարձությունները տեղի են ունեցել 252 թ., երբ Հայոց թագավորն էր Տրդատ II-ը, իսկ Պարսից՝ Շապուհ I-ը:

8. Սա Հայաստանի ապագա թագավոր Տրդատ III Մեծն է:

9. **Փոսից դըունք** – լեռնանցք Կարինից դեպի Կողոնիա տանող ճանապարհի վրա՝ Գայլ գետի ակունքների մոտ:

## ՀԱՅ-ՍԱՍԱՆՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ

### ՀԱ

### ԽՈՍՐՈՎԸ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԴԵՊԻ ԱՍՈՐԵՍՏԱՆ, ՈՐՈՎ ՄՏԱԴԻՐ ԷՐ ՕԳՆԵԼ ԱՐՏԱՎԱՆԻՆ

Երբ Սասանի որդի Արտաշիրը[1] Արտավանին սպանեց և ինքը թագավորեց, պահլավյան երկու ցեղերը, որոնք կոչվում են Ասպահապետի և Սուրենի Պահլավ, նախանձ պահած լինելով իրենց հարազատ ազգից թագավորած ցեղի դեմ, որ Արտաշեսինն էր, հոժարությամբ ընդունեցին Սասանի որդի Արտաշիրի թագավորությունը: Բայց Կարեն Պահլավի[2] տունը հավատարմություն պահպանելով դեպի իրենց

*եղբայրական ազգականությունը, պատերազմով դիմադրեց Սասանի որդի Արտաշիրին: Բայց դեռ ավելի առաջ Հայոց Խոսրով թագավորը[3], հենց որ լսեց ծագած խռովության մասին, աճապարեց օգնության գալու Արտավանին, եթե հնար լինի՝ չտապել ազատելու գոնե միայն Արտավանին: Բայց երբ նա Ասորեստան մտավ, այստեղ լսեց Արտավանի մահվան բոթը[4], բոլոր պարսից զորքերի և նախարարների միաբանությունը (Արտաշիրի հետ), ինչպես և իր ազգի՝ պարթևների և պահլավիկների, բացի Կարենյան ցեղից: Ուստի Խոսրովը սրա մոտ պատգամավորներ ուղարկելով՝ մեծ տրտմությամբ ու վշտով վերադառնում է մեր երկիրը: Եվ սակայն չտապով ծանուցանում է հռոմեացիների Փիլիպպոս կայսրին[5], նրանից օգնություն խնդրելով:*

## *ՀԲ*

### ԽՈՍՐՈՎԸ ՓԻԼԻՊՊՈՍԻՑ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՍՏԱՆԱԼՈՎ ՊԱՏԵՐԱԶՄՈՎ ԴԻՄՈՒՄ Է ԱՐՏԱՇԻՐԻ ՎՐԱ

*Փիլիպպոսը՝ իր թագավորության մեջ խռովություն ծագած լինելու պատճառով, չկարողացավ հռոմեացիների գնդերը զբաղեցնել Խոսրովին օժանդակելու համար, բայց նրան օգնեց, գրությամբ հրամայելով, որ բոլոր կողմերից նրան օժանդակեն: Այսպիսի հրաման ստանալով՝ նրան օգնության են հասնում Եգիպտոսից և անապատից սկսած մինչև Պոնտոսի ծովեզրյա կողմերը: (Խոսրովը) այսքան բազմություն ձեռք բերելով՝ դիմում է Արտաշիրի վրա, ճակատամարտ տալով նրան ստիպում է փախչել և խլում է նրանից Ասորեստանը և մյուս արքայանիստ երկրները:*

*Դարձյալ պատգամավորներ է ուղարկում իր տոհմային պարթև և պահլավիկ ազգերին և քուշանաց երկրների բոլոր զորքերին, որ գան իր մոտ Արտաշիրից վրեժ առնելու, և (հետո) ինքը նրանցից արժանավորին կթագավորեցնի, որպեսզի տերությունը նրանց ձեռքից դուրս չգա: Իսկ նրանք՝ վերը հիշատակված Ասպահապետի և Սուրենի պահլավները, չհամաձայնվեցին, որի պատճառով Խոսրովը մեր երկիրը վերադարձավ, ոչ այնչափ ուրախանալով տարած հաղթության վրա, որքան ցավելով իր ազգականների հրաժարվելու համար: Այս ժամանակ նրա մոտ են հասնում մի քանիսն այն պատգամավորներից, որոնք գնացել էին ամենապատվավոր ազգի մոտ, աշխարհի խորքերը, բուն Բահլը[6], և նրան լուր բերին, թե քո ազգական Վեհսաճանը, իր Կարենյան պահլավ ցեղով, Արտաշիրին չհնազանդվեց, այլ*

*քո կոչին անսալով, գալիս է քո մոտ:*

## ՀԳ

### ԽՈՍՐՈՎԻ ԿՐԿԻՆ ՀԱՐՁԱԿՎԵԼԸ ԱՐՏԱՇԻՐԻ ՎՐԱ՝ ԱՌԱՆՑ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՆ

*Թեպետև Փիլիպպոսը վախճանվել էր և հռոմեացիների թագավորությունը խառնակ վիճակում էր, և մեկը մյուսի ձեռքից խլում էին տերությունը կարճ ժամանակով, ինչպես էին Դեկիոս, Գալլոս և Վալերիանոս կայսրերը[7], որոնք Խոսրովին չօգնեցին, բայց նա իր զորքերով և նրան հարած ուրիշ սիրելիներով և հյուսիսային ազգերի օգնությամբ Արտաշիրին հաղթեց և հալածելով քշեց մինչև Հնդկաստան:*

## ՀԴ

### ԱՆԱԿԻ ԳԱԼՍՏՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այսպես Արտաշիրը Խոսրովից մինչև Հնդկաստան փախչելով և շատ նեղվելով՝ մեծամեծ խոստումներ է անում նախարարներին, եթե մեկն իրեն ազատի նրանից կա՛մ թույնի միջոցով, կա՛մ գաղտնապես սրով սպանելով. զանազան տեսակ պատիվներ էր խոստանում: «Մանավանդ ձեզ, պարթևազուններիդ, - ասում է նա, - կարծես ավելի հեշտ կլինի նրա դեմ դավ սարքել սիրո պատրվակով. ազգականության պատճառով նա ձեզ կվստահանա կխաբվի»: Նրանց խոստանում է վերադարձնել բուն պարթևական տունը, որ կոչվում էր Պահլավ, արքայանիստ Բահլ քաղաքը և ամբողջ Քուշանաց երկիրը[8]: Նաև խոստանում է թագավորական ձև և պատիվներ, արյաց աշխարհի կեսը և իր երկրորդը լինել իր ձեռքի տակ: Այս խոստումներից հրապուրվելով՝ Անակը, որ Սուրենյան պահլավի ցեղից էր, հանձն է առնում Խոսրովին սպանել: Եվ կեղծելով, թե գաղթում է, փախչում է Արտաշիրից. նրան ձևի համար հետամուտ են լինում պարսից զորքերը և իբրև թե փախցնելով, քշում են Ասորեստանով, բերում հանում են Ատրպատականի սահմանների մոտ Կորդուքի միջով: Մեծն Խոսրովը Ուտիքի գավառում[9] այս բանը լսելով՝ կարծում է, թե Կարենյաններն են եկողները և մի գունդ է ուղարկում Անակին օգնության: Սրանք Անակին պատահելով՝ թագավորի հրամանով*

*Նրան տանում են Արտազ կոչված գավառը, մի դաշտավայր տեղ...։*

*Անակը Հայաստան գալուց երկու տարի անցած՝ երրորդում սպանում է Խոսրովին, որ թագավորեց քառասունութ տարի*[10]*։ Ինքը (Անակը) և բոլոր յուրայինները մեռնում են։*

*ՀԶ*

ԱՐՏԱՇԻՐԻ ՄԵԶ ՎՐԱ ԳԱԼԸ ԵՎ ՏԱԿԻՏՈՍ ԿԱՅՍՐԻՆ ՀԱՂԹԵԼԸ

*Նույն մարդն*[11] *ասում է, թե Խոսրովի սրախողխող լինելուց հետո Հայոց նախարարները միաբանվելով՝ իրենց օգնության են կանչում Փռյուգիայում գտնվող հունաց զորքերը՝ պարսիկներին դիմադրելու և Հայաստանը պաշտպանելու համար։ Եվ իսկույն իմաց տվին Վաղերիանոս*[12] *կայսրին։ Բայց որովհետև գոթերը Դանուբ գետն անցնելով շատ գավառներ գերեցին և Կյուկլադի կղզիները*[13] *կողոպտեցին, ուստի Վաղերիանոսը չի կարողանում մեր երկիրը հովանավորել, նաև նրա կյանքն էլ կարճ է տևում, և նրանից թագավորությունն առնում է Կլավդիոսը և նրանից հետո Ավրելիանոսը, արագ-արագ իրար հաջորդելով. նույնիսկ ամիսներով թագավորեցին Կյունտոս և Տակիտոս և Փղոռիանոս եղբայրները*[14]*։ Այս պատճառով Արտաշիրը*[15] *համարձակաբար արշավեց մեր երկիրը, հունաց զորքերին դուրս քշեց և մեր երկրի մեծագույն մասը գերելով ավերակ դարձրեց։ Հայոց նախարարները՝ Արշակունյաց ցեղի հետ նրանից (խուսափելով) գաղթում ապավինում են հույներին. սրանցից մեկն էր և Արտավազդ Մանդակունին, որ Խոսրովի Տրդատ*[16] *որդուն առնելով հասցնում է կայսեր պալատը։ Ուստի Տակիտոսը հարկադրված գալիս է Արտաշիրի վրա, Պոնտոսի կողմերը, իսկ իր եղբոր՝ Փղոռիանոսին ուրիշ գնդով ուղարկում է դեպի Կիլիկիա։ Իսկ Արտաշիրը Տակիտոսին հասնելով՝ նրան փախցնում է, որ և յուրայիններից սպանվում է պոնտացիների ճանկուքում, այսինքն՝ Խաղտիքում, այսպես և նրա Փղոռիանոս եղբայրն (սպանվում է) Տարսոնում ութսունութ օր հետո։*

*ՀԷ*

ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ԵՎ ՀՈՒՅՆԵՐԻ ՄԵՋ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ՀԱՍՏԱՏՎԵԼԸ
ԵՎ ԱՐՏԱՇԻՐԻ՝ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԲԱՐԵԿԱՐԳ ՊԱՀԵԼԸ
ԱՆԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԱՐԻՆԵՐՈՒՄ

*Բայց հույների վրա թագավորեց Պռոբոսը*[17] *և Արտաշիրի հետ խաղաղություն կնքելով՝ մեր երկիրը բաժանում է, սահմանացույց*

*փոսեր փորելով: Արտաշիրը նվաճեց նախարարական ցեղերը, գաղթածներին ետ դարձրեց, ամուր տեղերը ապավինածներին ներքև իջեցրեց, բացի Ամատունյաց ցեղի Օտա անունով մի նախարարից, որ Սլկունյաց ցեղի փեսա էր և սնուցում էր Խոսրովի դուստր Խոսրովիդուխտին Անի ամրոցում, իբրև մի որջում ապահով թաքնվելով:*

*Իսկ Արտաշիրը գեղեցիկ կարգավորում է Հայաստանը, վերականգնում է նախկին կարգերը: Նաև այն Արշակունիներին, որոնք հրաժարեցրած էին թագից և Այրարատում բնակվելու իրավունքից, նա նույն տեղերում հաստատում է եկամուտներով և ուտեստով, ինչպես որ առաջ էին[18]: Մեհյանների պաշտամունքն էլ ավելի զարգացնում է, այլև հրամայում է անշեջ պահել որմզդական հուրը Բագավանի բագինի վրա[19]: ... Մեր երկիրը նա հարկատու է դարձնում և ամեն բանում իր անունն է հաստատում:*

*Նաև Արտաշեսի հաստատած սահմանները՝ գետնի մեջ քարեր կանգնեցնելով, նա նորոգեց և իր անունով կոչեց Արտաշիրական: Նա մեր երկիրը կառավարեց պարսիկ գործակալների ձեռքով, ինչպես իր երկրներից մեկը, քսանվեց տարի և նրանից հետո նրա որդին, որ կոչվեց Շարուհ[20], այսինքն՝ արքայի որդի, թագավորեց մեկ տարի, մինչև Տրդատի թագավորելը[21]:*

## *ՀԸ*

### ՄԱՆԴԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՑԵՂԻ ԿՈՏՈՐՈՒՄԸ ԱՐՏԱՇԻՐԻ ՁԵՌՔՈՎ

*Բայց Արտաշիրը լսել էր, թե հայոց նախարարներից մեկը Խոսրովի որդիներից մեկին առնելով փախցրել ազատել է՝ կայսեր պալատը հասցնելով: Եվ քննելով, թե ո՞վ է այդ մարդը, իմացավ, որ Արտավազդն է, Մանդակունիների ցեղից[22]. ուստի հրամայեց նրա բոլոր ցեղը կոտորել ոչնչացնել: Որովհետև երբ հայերը Արտաշիրից գաղթեցին, Մանդակունիները ևս մյուս նախարարական ցեղերի հետ գաղթեցին, իսկ երբ Արտաշիրը մյուսներին նվաճեց, նրանք էլ ետ դարձան և բոլորը սրով կոտորվեցին:*

*1. Արտաշիր Պապականը Պարսք նահանգի Ստահր գավառի Անահիտ դիցուհու տաճարի քրմապետ Սասանի թոռն էր: 224 թ. ապստամբում է Արշակունիների դեմ և պարտության մատնում պարթևական վերջին թագավոր Արտավան V-ին, սպանում է նրան և հռչակվում Պարսկաստանի թագավոր՝ այստեղ հիմնադրելով Սասանյան թագավորական հարստությունը:*

*2. Ըստ ավանդության, Ասպահապետի, Սուրենի և Կարենի պահլավները կրտսեր ներկայացուցիչներն էին պարթև Արշակունիների:*

*3. Հայ ավանդական պատմագրությունը, հետևելով Խորենացուն, հիշյալ իրադարձությունների ժամանակակից ու մասնակից Հայաստանի թագավոր է հիշատակում Խոսրով I Արշակունուն (198-216): Մինչդեռ այդ ժամանակ թագավորում էր վերջինիս որդին՝ Տրդատ II-ը (217-252):*

*4. Վճռական ճակատամարտը Արտավան V-ի և Արտաշիր I Պապականի միջև տեղի է ունեցել 224 թ. ապրիլի 27-ին, Որմզդական կոչված դաշտում:*

*5. Խոսքը վերաբերում է Հռոմի կայսր Փիլիպպոս Արաբին (224-249):*

*6. Բահլ (Բահլ Առավոտին) քաղաքը գտնվում էր Բակտրիայում՝ Արշակունիների բուն հայրենիքում, Օքսուս գետի (Ամուդարյա) հովտում: Այժմ նրա ավերակները գտնվում են Աֆղանստանում:*

*7. Հռոմեական կայսրեր, որոնք համապատասխանաբար իշխել են Դեկոսը՝ 249-251, Գալլոսը՝ 251-253 և Վալերիանոսը՝ 253-260 թվականներին:*

*8. Քուշանաց թագավորությունը I-III դդ. ընդգրկում էր ներկայիս Միջին Ասիայի, Աֆղանստանի, Արևմտյան Պակիստանի և Հյուսիսային Հնդկաստանի տարածքների զգալի մասը:*

*9. Այլ աղբյուրներից հայտնի է, որ Խոսրովը այդ ժամանակ գտնվում էր Ուտիքի Խաղխաղ բնակավայրում՝ հայոց արքաների ձմեռանոցում:*

*10. Ըստ Խորենացու ժամանակագրության, Խոսրովը Հայաստանում թագավորել է III դարի առաջին կեսում:*

*11. Խորենացին նկատի ունի հույն մատենագիր Փերմելիանոս եպիսկոպոսին, որը գրել է իր ժամանակների (մահացել է 260 թ.) պատմությունը, այն, սակայն, մեզ չի հասել:*

*12. Խոսքը Հռոմի Վալերիանոս կայսեր մասին է:*

*13. **Կյուկլադի կղզիներ** – մանր կղզիների արշիպելագոս, որն ընկած է Հունաստանի և Փոքր Ասիայի արևմտյան ափերի միջև:*

*14. Հռոմեական կայսրեր, որոնք հաջորդաբար իշխել են. Կլավդիոսը՝ 268-270, Ավրելիանոսը՝ 270-275, Քվինտիլոսը՝ 270, Տակիտոսը՝ 275-276 և Փլորիանոսը՝ 276 թվականներին:*

*15. Այստեղ հիշատակված Սասանյան թագավոր Արտաշիրին Խորենացին ներկայացրել է իբրև ժամանակակից Վալերիանոսի և նրանից հետո իշխած հռոմեական կայսրերի (253 թ. հետո): Սակայն հայտնի է, որ Արտաշիր I-ը մահացել է 241 թ. և Իրանում գահ է բարձրացել վերջինիս որդի Շապուհ I-ը (241-272): Խորենացու մոտ այս շփոթությունը առաջացել է հետևյալ կերպ. Շապուհ I-ը 261-262 թթ. նվաճելով Հայաստանը՝ այստեղ թագավոր է հռչակում իր որդուն՝ թագաժառանգ Որմիզդ-Արտաշիրին (262-272): Ահա այս Արտաշիրի և Արտաշիր I Պապականի համանման անուններն են, որ շփոթեցրել են Խորենացուն: Հետևաբար, Արտաշիրի գործունեությունը Հայաստանում պետք է վերագրել ոչ թե Արտաշիր I Պապականին, այլ «Թագավոր Հայոց Մեծաց»՝ Որմիզդ-Արտաշիրին:*

*16. Ըստ Խորենացու, այս Տրդատը Հայաստանի ապագա թագավոր Տրդատ III Մեծն էր՝ Խոսրով I-ի որդին: Իրականում Տրդատ III-ը որդին էր Խոսրով II-ի, որի մասին աղոտ տեղեկություններ են պահպանվել: Ս. Երեմյանը կարծում է, որ հռոմեացիները սրան անվանապես են ճանաչել Հայոց թագավոր (279-287):*

*17. Սա Հռոմեական կայսր Պոոբոսն է (276-282):*

*18. Պատմահայրը նկատի ունի այն կարգը, որ Հայոց Արշակունի արքայազները՝ բացի գահաժառանգից, իրավունք չունեին բնակվելու արքունի ոստանում և նրանց համար առանձնացված էին գավառներ ու նշանակված էր նպաստ:*

*19. **Բագավան** (բառացիորեն՝ աստվածների ավան) - բնակավայր և պաշտամունքային կենտրոն Այրարատի Բագրևանդ գավառի հարավարևելյան մասում, Նպատ լեռան հյուսիսարևմտյան ստորոտին, Արածանի գետի ձախ ափին, այժմյան Ուչքիլիսե գյուղի տեղում:*

*20. Այստեղ Խորենացին նկատի ունի Արտաշիր Պապականի որդի, Իրանի արքայից արքա Շապուհ I-ին: Սակայն, պետք է նշել, որ այստեղ ևս շփոթմունք կա: Որմիզդ-Արտաշիրից հետո Հայաստանում թագավոր է դառնում Ներսեհ Սասանյանը (272-293)՝ Պարսից ապագա արքայից արքան (293-302):*

*21. Նորագույն ուսումնասիրությունների համաձայն, Տրդատ III-ը հռոմեացիների կողմից պաշտոնապես Հայաստանի թագավոր է հռչակվել 287 թ., իսկ 298 թ. Սասանյանների կողմից ևս Տրդատ III-ը ճանաչվեց ամբողջ Մեծ Հայքի թագավոր:*

*22. Ուսումնասիրողները ենթադրում են, որ այս Արտավազդ Մանդակունին պետք է լինի այլ աղբյուրներից հայտնի «Թագավոր Հայոց Մեծաց» Արտավազդ V-ը (252-262): Ինչպես հայտնի է, պարսկա-հռոմեական պատերազմները (249-252 թթ.) ավարտվեցին Հռոմի պարտությամբ և պարսիկները գրավեցին Հայաստանը: Հայոց Տրդատ II թագավորը փախավ կամ սպանվեց, իսկ Շապուհ I-ը Հայաստանում թագավոր է նշանակում այս Արտավազդին, որին բոլոր հիմքերը կան նույնացնելու Խորենացու հիշատակած Արտավազդ Մանդակունու հետ:*

## «ՔԱՐԹԼԻՍ ՑԽՈՎՐԵԲԱՆ» ՀԱՅ-ՍԱՍԱՆՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ (III ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ՔԱՌՈՐԴ)

### (Արշակունիանները), էջ 59-64

ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ ԹԱԳԱՎՈՐ ԱՍՓԱԳՈՒՐ ԱՐՇԱԿՈՒՆԻԱՆԸ՝
ՄԻՀՐԴԱՏԻ ՈՐԴԻՆ

*Եվ Միհրդատից[1] հետո թագավորում էր նրա որդի Ասփագուրը[2]:*

*Այս Ասփագուրը կառուցեց բերդ-քաղաք Ուջարմանն[3]:*

*Իսկ Ալեքսանդրի[4] թագավորությունից սկսած այս բոլոր թագավորներն էին թագավորում Քարթլիում և կռապաշտներ էին: Եվ այս Ասփագուրը վերջին թագավորն էր Փառնավազյան տոհմից: Եվ սրա օրոք Պարսկաստանում արքա դարձավ Քասրե Անուշարվան Սասանիանը[5], որը կոտորեց Աժդալանյաններ[6] թագավորներին: Իսկ Սոմխիթում արքա դարձավ Կոսարոն[7]:*

*Եվ այս Կոսարոն՝ սոմեխների արքան, սկսեց պատերազմել Պարսկաստանի Քասրե արքայի դեմ, և նրան օգնում էր Ասփագուրը՝ քարթվելների թագավորը, և այս Ասփագուրը բացեց Կովկասյանների դուռը[8] և բերեց օսերին, լեկերին ու խազարներին, և եկան սոմեխների արքա Կոսարոյի մոտ՝ պարսիկների դեմ պատերազմելու համար:*

*Եվ Պարսկաստան կատարած առաջին իսկ արշավանքին պարտվեց Քասրեն՝ պարսիկների արքան, և փախուստի մատնեցին նրան և կոտորեցին նրա զորքը: Եվ այդ ժամանակից սրանց չկարողացավ դիմակայել պարսիկների այդ արքան և Հաճախակի դարձրին դեպի Պարսկաստան ասպատակելն ու գերեվարելը:*

*Սակայն վերջացան Քարթլիի Փառնավազյաններ (տոհմի) թագավորները:*

## ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ՆԵՐԽՈՒԺՈՒՄԸ ՔԱՐԹԼԻ ԵՎ ՔԱՍՐԵԻ ՈՐԴԻ ՄԻՐԻԱՆԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ

*Եվ երբ սոմեխներն ու քարթվելները և Հյուսիսային ցեղերը փախուստի մատնեցին Պարսկաստանի արքային և Հաճախակի դարձրին Պարսկաստան ներխուժելն ու Պարսկաստանն ավերելը, և երբ չկարողացավ նրանց դիմադրել, այնժամ պարսիկների արքան, լի տրտմությամբ, Հրավիրեց աշխարՀների (երկրների) գլխավորներին՝ բդեշխներին և էրիսթավներին, և խորՀուրդ արեց (նրանց Հետ): Եվ փնտրում էր միջոց վրա Հասած չարագործության դեմ և մեծ պարգև ու պատիվ էր խոստանում (նրան), ով կկարողանա ու կգտնի Հնար վրեժխնդրության:*

*Իսկ այդ ժողովին ներկա էր մի երևելի մթավարի[9] Անակ անվամբ[10], որը սոմեխների Կոսարո արքայի տոՀմից էր: Նա վեր ելավ, (գնաց) արքայի առաջ կանգնեց և ասաց. «Փախուստի է մատնված մեր զորքը սոմեխների Կոսարո արքայի կողմից, կոտորվել են մեր ռազմիկները, և (Կոսարոն) աՀ ու սարսափ է տարածել պարսիկների*

*վրա, և հզորացել են նրանք և զորություն չունենք ընդդիմանալու նրանց: Արդ՝ այս է խորհուրդն իմ, որպեսզի խաղաղությամբ և աղերսանքով ու հարկեր տալով խաղաղեցնենք Կոսարո արքային»: Այս որ ասաց Անակը, ոչ թե սրտով ասաց, այլ այդ (գումարած) բազմությունից իր սրտի խորհուրդը թաքցրեց: Մերձեցավ արքային և ասաց (ծածուկ). «Գիտեցիր, որ այս չէ իմ խորհուրդը, որ ասացի, այլ արժանի դարձրու ինձ միայնակ խոսել քո առջև, ապա (այնժամ) կհայտնեմ  քո թագավորությանը սրտի խորհուրդը իմ»: Ապա այդ երևելիները ամեն մեկը խոսեցին արքայի առաջ և գնացին: Այնուհետև ծածուկ կանչեց արքան Անակին, և Անակն ասաց արքային. «Արքա, ողջ լեր հավիտյանս, ես կգտնեմ Կոսարոյից վրեժխնդրության հնարը: Կգնամ  նրա մոտ իմ ընտանիքով հանդերձ, և նա ինձ կվստահի ազգակից (տոհմակից) լինելու պատճառով, և քո բախտը բարին կբերի, ու կսպանեմ այն արքային և անձն իմ կզոհաբերեմ հանուն քեզ»:*

*Հավանեց արքան այս խորհուրդը: Եվ մի քանի օրից հետո գնացին Անակը և նրա եղբայրը իրենց ընտանիքով որպես Պարսից արքայից հեռացածներ (ապստամբներ): Եվ եկավ Սոմխիթի սահմանը, Խիլախիլա կոչվող քաղաքը[11], սոմեխների արքաների ձմեռանոցը: Տեսնելով նրան, Կոսարո արքան մեծ պատիվներով ընդունեց, քանզի ամենայն հնարքով իր գալուստը (Անակը) հավատարժան էր ցուցադրում: Եվ տեսնում էր արքան, որ ընտանյոք հանդերձ է եկել իր մոտ, ուստի և արքան պատվի արժանացրեց նրան, իր գահից երկրորդ (բարձին)[12] բազմեցրեց նրան բերկրանքով ու վստահությամբ: Երբ անցան օրերն ձմեռային, և մոտեցան օրերն ամառային եղանակի, և հորդացան գետերը, այնտեղից արքան ելավ և եկավ Արատ[13] քաղաքը, և նախապատրաստվել էր Կոսարո արքան կրկին Պարսկաստան արշավելու: Այդ ժամանակ, մի  օր արքան որսի գնաց, և նրա հետ էին Անակն ու նրա եղբայրը, որոնք ծածուկ պահել էին բրդյա անձրևակալի տակ սրած թրերը, ապա (հարմար) պահ գտնելով, սպանեցին արքային և փախան: Սակայն Սոմխիթի մթավարները հետապնդեցին նրանց և հասան ոմանց կամրջի վրա ու ոմանց ծանծաղուտում և կոտորեցին նեղ տեղում, և ոչ ոք չփախավ, բոլորին  էլ սպանեցին: Եվ կոտորեցին նրանց ողջ տոհմը, բայց (նրանցից) մնացին երկու որդի, որոնց փրկեցին նրանց դայակները. մեկը[14] ապաստանեց Սաբերձնեթի[15] սահմաններում, իսկ մյուսը՝ Պարսկաստանի սահմաններում:*

*Երբ լսեց այս լուրը պարսիկների արքա Քասրե Սասանիանը, լցվեց բերկրանքով և չարժվեց իր ողջ զորքով: Նախ նա եկավ Սոմխիթ և*

գրավեց Սոմխիթը, բնաջինջ արեց և գերեց սոմեխների արքայի ամբողջ տոհմը: Սակայն արքայի մանկահասակ մի որդին ապաստանեց Սաբերձնեթի սահմաններում և այնտեղ էր դաստիարակվում (մեծանում), որի անունը Թրդատ[16] էր: Այն ժամանակ, երբ պարսիկների արքան գրավեց Սոմխիթը և մուտք գործեց Քարթլի, մեկնեց քարթվելների թագավոր Ասփագուրը Օվսեթ[17], որպեսզի զորքերը ավելացնի Օվսեթից (բերածով), և ամրացրեց բերդաքաղաքները: Սակայն երբ Ասփագուրը ժամանեց Օվսեթ, վրա հասավ մահը և այնտեղ մահացավ:

Այս Ասփագուրը արու զավակ չուներ, այլ միայն մի դուստր: Այնժամ ժողովվեցին Քարթլիի բոլոր էրիսթավները Մցխեթ քաղաքում՝ սպասպետի[18] մոտ, որին Մաեժան էին անվանում: Խորհուրդ արին միասին լի տրտմությամբ և ասացին. «Թույլ չտանք վիշտն իշխի մեր սրտին, որպեսզի այն չզրկի մեզ բանականությունից, այլ մեր ցավի և փորձության դեմ հնար գտնենք»: Ապա ասաց, Մաեժան սպասպետը. «Եթե մենք այնչափ զորություն ունենայինք, որ Պարսկաստանի մեկ երրորդին հավասարվեինք, ապա մահու կտայինք մեր անձն ու նրանց դեմ կելնեինք: Եվ եթե մնացած լիներ ժառանգ մեր թագավորներից կամ ազգական (ոմն) մեր թագավորներից, որն արժանի լիներ թագավորելու, (այդ դեպքում) կամրանայինք բերդ-քաղաքներում, մահու կտայինք մեր անձն ու անգամ մարդու միս կուտեինք, ինչպես մեր նախնիները: Սակայն տվյալ պահին այնպես է ստացվել, որ սպանվել է Սոմխիթի մեծն արքան պարսիկների կողմից, նվաճված է Սոմխիթը, որից կախված էր մեր թագավորությունը, և պարսիկների արքան բացել է իր երախը ողջ երկիրը կլանելու մտումով: Մեր մեջ չկա ոչ ոք, (որ) նրա դեմ ելնի և մենք մնացել ենք որբի պես, ինչպես ոչխարն առանց հովվի: Արդ՝ այս է խորհուրդն իմ, որ պարսիկների արքային հպատակություն հայտնենք և խնդրենք նրանից ողորմածություն՝ խնդրենք նրանից տալ իր որդուն որպես թագավոր մեզ և աղերսենք, որպեսզի կնության առնի իր որդուն[19] մեր թագավոր Ասփագուրի դուստրը: Հայտնենք, որ այդ օրիորդը Քարթլոսիաններին և Նեբրոթիաններին, մեծն Արշակունիաններին և մեր թագավորներ Փառնավազյաններին ազգակից է, և խնդրենք նրանից պահպանել հավատը մեր նախնիների, և խնդրենք, որ մեզ հետ չխառնվեն պարսիկները, և մեծ պատվով իշխի մեզ վրա: Եվ եթե ընդունի մեր այս աղերսանքը և անի ամեն ինչ այսպես, և եթե ընդունի մեր նախնիների հավատը, և եթե պարսիկներին մեզանից վեր դասի կամ թե մեր թագավորների ազգակիցներին կոտորի, ապա մահը գերադասելի է, քան նման իրողությանն ականատես լինելը: (Այդ դեպքում) կամրա-

*նանք բերդում ու քաղաքներում և բոլորս էլ կկոտորվենք»:*

*Այնժամ բոլոր երիտթավները հավանեցին Մաեժան սպասպետի խորհուրդը, և ուղարկեցին պատվիրակ պարսիկների արքայի մոտ, և զեկուցեցին այն ամենի մասին, ինչ խորհուրդ էին արել:*

*1. «Քարթլիս Ցխովրեբայի» արքայացանկում այս Միհրդատը 22-րդ թագավորն է:*

*2. Ասփագուրը կիսապատմական անձնավորություն է:*

*3. **Ուջարմա** – ամրոց, իսկ այնուհետև քաղաք Արմազիից արևելք, այժմ՝ նույնանուն գյուղը:*

*4. Նկատի ունի Ալեքսանդր Մակեդոնացուն:*

*5. Խոսքը Պարսք երկրի արքայիկ Արտաշիր Պապական Սասանյանի մասին է, որը ապստամբելով պարթև Արշակունիների դեմ՝ տապալեց նրանց հարստությունը և բարձրացավ գահ:*

*6. Այսինքն՝ պարթև Արշակունիներին:*

*7. **Կոսարո** (Խոսրով) – հետևելով հայկական պատմական ավանդությանը, Լեոնտի Մրովելին այս ժամանակաշրջանի համար Հայաստանի թագավոր է ճանաչում Խոսրով Մեծին, մինչդեռ հիշյալ իրադարձությունների մասնակիցը Խոսրով I թագավորի որդի՝ Տրդատ II Արշակունին էր:*

*8. Հեղինակը նկատի ունի Ալանաց դուռը, Հյուսիսային Կովկասից դեպի հարավ՝ Դարիալի կիրճով անցնող ուղին:*

*9. **Մթավարի** – բառացիորեն նշանակում է իշխան:*

*10. Ավանդության համաձայն, Անակը պարթև Արշակունիների, հետևաբար և հայ Արշակունիների, ազգականն էր՝ Սուրենյան Պահլավի տոհմի ներկայացուցիչը, տոհմ, որը հավակնում էր Արշակունիներից հետո երկրորդը լինելու:*

*11. **Խիլախիլա** – հայկական Խաղխաղ քաղաքն է, Մեծ Հայքի Ուտիք նահանգում՝ Կուրի աջ ափին, Ջակամ վտակի միախառնման տեղում:*

*12. Այսինքն՝ Անակը պետք է դառնար պետության մեջ երկրորդ անձը: Ըստ երևույթին, սա «երկրորդական գահ» գործակալությունն էր, որի մասին ակնարկում է նաև Խորենացին (տե՛ս «Հայոց պատմություն», գիրք Բ, գլ. ԾԱ):*

*13. **Արատ** – խոսքը Արտաշատ մայրաքաղաքի մասին է:*

*14. Ավանդության համաձայն, Անակի մանկահասակ այդ որդուն (ապագա Գրիգոր Լուսավորչին) նրա դայակ Սոփին, փրկելով Արշակունիների վրեժխնդրությունից, փախցնում է Կապադովկիայի Կեսարիա քաղաքը, որտեղ Գրիգորը կրթվում ու դաստիարակվում է քրիստոնեական ոգով:*

*15. Նկատի ունի Հռոմեական կայսրությունը:*

*16. **Թրդատ** – սա Հայաստանի ապագա թագավոր Տրդատ III Մեծն էր:*

*17. Այսինքն՝ Օսեթիա:*

*18. **Սպասպետ** – այսինքն՝ սպարապետ:*

*19. Վրացագիտության մեջ այժմ այն տեսակետն է քաղաքացիություն ստա -*

*ցել, որ քրիստոնեությունը Վրաստանում որպես պետական կրոն ընդունվել է 337 թ.՝ Միրիան (Միհրան) թագավորի օրոք: Հետևաբար, տվյալ հատվածի Միրիանը՝ պարսից Քասրե արքայի որդին, չի կարող լինել IV դարի 30-ական թվականների անձնավորություն, քանի որ նա (ըստ Մրովելու) III դարի 30-ական թվականների անձ էր: Այստեղ անախրոնիզմն ու շփոթմունքը ակնհայտ է:*

## ՊԱՐՍԿԱ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ III ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՆ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԸՍՏ ԶՈՆԱՐԱՍԻ

***Հովհաննես Զոնարասը (XII դ.) բյուզանդական աչքի ընկնող պետական գործիչ է և մատենագիր: Նրա գրչին է պատկանում համաշխարհային պատմությանը նվիրված մի ընդարձակ ժամանակագրություն, որը կրում է «Համառոտ պատմություն» խորագիրը: Զոնարասի երկն ընդգրկում է հսկայական ժամանակահատված՝ աշխարհաշինությունից մինչև 1118 թվականը: Ժամանակագրությունը շարադրելիս նա օգտագործել է մեծ թվով պատմական երկասիրություններ, որոնցից շատերը մեզ չեն հասել: Հատկապես արժեքավոր են Զոնարասի երկում պահպանված տեղեկությունները Հայաստանի III դարի պատմության տարբեր անցքերի վերաբերյալ:***

***Զոնարասից ստորև բերված հատվածները տալիս ենք Հ. Հ. Մանանդյանի թարգմանությամբ, որը կատարված է*** «Ioannis Zonarae. Epitomae historiarum, ed, L. Dindorfius, vol. III, Lipsiae, 1870» ***հրատարակությունից:***

### *ՀԱՄԱՌՈՏ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ, ԳԻՐՔ XIII*

*XIX. [Գորդիանոսին] հաջորդեց Փիլիպպոսը[1], որը տեր դառավ Հռոմեական կայսրության: ... Նա հաշտություն կնքելով Պարսից թագավոր Շապուհի[2] հետ՝ դադարեցրեց պատերազմը պարսիկների հետ և զիջեց նրանց Միջագետքն ու Հայաստանը[3]: Բայց երբ նա տեսավ, որ հռոմեացիները վշտացած են այդ երկրների կորստի պատճառով՝ մի փոքր հետո դաշնագիրն անվավեր համարեց և երկրները ետ վերցրեց:*

*XXI. Նորից սրա [Գալլոսի] ժամանակ[4] սկսեցին պարսիկների խլրտումները և նրանք նվաճեցին Հայաստանը: Այս երկրի Տրդատ[5] թագավորը փախավ, իսկ նրա որդիները մեկնեցին Պարսից կողմերը:*

*1. Խոսքը Հռոմի կայսր Փիլիպպոս Արաբի մասին է:*

*2. Սա Սասանյան Շապուհ I թագավորն է:*

*3. Պարսկա-հռոմեական այս պայմանագիրը կնքվել է 244 թվականին: Ուսումնասիրողները, վիճարկելով Զոնարասի սույն վկայությունը, գտնում են, որ բյուզանդական մատենագիրը կամ նրա աղբյուրը, ակնհայտորեն չփոթում են, քանի որ Մեծ Հայքի թագավորությունը լինելով անկախ պետություն, չէր կարող զիջված լինել Պարսկաստանին:*

*4. Այսինքն՝ 251-252 թվականներին:*

*5. Այստեղ խոսքը Հայոց Տրդատ II թագավորի մասին է:*

## ՀԱՅՈՑ ԱՐՏԱՎԱԶԴ V ԹԱԳԱՎՈՐԻ ՆԱՄԱԿԸ ՇԱՊՈՒՀ I-ԻՆ ԸՍՏ ՏՐԵԲԵԼԼԻՈՍ ՊՈԼԻՈՆԻ

***II-III դարերի Հռոմի պատմության կարևորագույն սկզբնաղբյուրներից է «Կայսերականք» («Կայսրերի կենսագրություններ») ժողովածուն: Սա հռոմեական կայսրերի կենսագրությունների մի ուրույն հավաքածու է, որը սկսվում է Ադրիանոսից և ավարտվում Նումերիանոսի գահակալության տարիներով: Այսինքն՝ այն ընդգրկում է 117-284 թվականների միջև ընկած ժամանակահատվածում գահ բարձրացած կայսրերի պատմությունը: Ի թիվս այլ մատենագիրների, այս ժողովածուն կազմելու աշխատանքներին մասնակցել է նաև III դարի հռոմեական պատմիչ Տրեբելլիոս Պոլիոնը, որի մասին, ցավոք, կենսագրական տվյալներ համարյա չկան:***

***Պոլիոնը Վալերիանոս կայսեր կենսագրությունում բերում է Հայոց թագավոր Արտավազդ V-ի նամակը ուղղված Պարսից Շապուհ I թագավորին: Արտավազդ V-ի մասին տեղեկությունները հակասական են ու կցկտուր: Որոշ ուսումնասիրողներ գտնում են, որ Արտավազդը գահակալել է Շապուհ I-ի օգնությամբ, երբ 249-252 թթ. պարսկա-հռոմեական պատերազմից հետո Հայաստանը ենթարկվեց Սասանյանների գերիշխանությանը, իսկ Հայոց թագավոր Տրդատ II-ը փախավ կամ սպանվեց: Կարծիք է հայտնվել նաև, որ Արտավազդ V-ը Արշակունի չէր, և ըստ այդմ նրան նույնացնում են Մովսես Խորենացու մոտ հիշատակված Արտավազդ Մանդակունու հետ (տե՛ս 483-րդ էջ, ծան. № 22):***

***Տրեբելլիոս Պոլիոնից ստորև բերված հատվածը տալիս ենք Հ. Հ. Մանանդյանի թարգմանությամբ, որը կատարված է*** «**Trebellius Pollio,** Valerianus pater et filius» ***տե՛ս*** «Scriptores Historiae Augustae, edid. **E. Hohl,** vol. II. Lipsiae, 1927» ***հրատարակությունից:***

## *ՏՐԵԲԵԼԼԻՈՍ ՊՈԼԻՈՆ*

## *ՎԱԼԵՐԻԱՆՈՍ*

*6. Արտավազդը՝[1] Հայոց թագավորը, ուղարկեց Շապուհին[2] հետևյալ նամակը.- «Համակիր եմ քո փառքին, բայց երկյուղ եմ կրում, որ դու ոչ այնքան հաղթել ես, որքան հրահրել ես մոլեգին կռիվը[3]: Վալերիանոսին այժմ պահանջում են ազատ արձակել և՛ նրա որդին[4], և՛ թոռը, և՛ հռոմեական զորավարները, և՛ ամբողջ Գալլիան, ամբողջ Աֆրիկան, ամբողջ Իսպանիան, ամբողջ Իտալիան, ու նաև բոլոր ժողովուրդները, որոնք ապրում են Իլլիրիկումում[5], նաև Արևելքում ու Պոնտոսում, և որոնք կողմնակից են հռոմեացիներին կամ նրանց հպատակ են: Դու վերցրիր գերի միայն մի ծերունու, իսկ քեզ հետ խիստ թշնամացրիր աշխարհի բոլոր ժողովուրդներին. գուցե նաև մեզ հետ, որ ուղարկել էինք քեզ օգնական զորքեր[6]. մենք, որ քո հարևաններն ենք՝ միշտ ծանր դրության մեջ ենք ընկնում, երբ դուք իրար հետ կռվում եք»:*

*1. Արտավազդ V-ը Հայաստանի թագավոր է եղել 252-262 թվականներին:*

*2. Սա Պարսկաստանի Շապուհ I թագավորն է:*

*3. Արտավազդ V-ը ակնարկում է 256-260 թթ. պարսկա-հռոմեական պատերազմը, որն ավարտվեց Եդեսիայի մոտ հռոմեացիների կրած ծանր պարտությամբ (260 թ.): Ճակատամարտի ժամանակ պարսիկները գերի վերցրեցին նաև Հռոմի Վալերիանոս կայսրին (253-260), որը գերության մեջ էլ մահացավ:*

*4. Նկատի ունի Վալերիանոս կայսեր որդուն՝ Պուբլիոս Գալլիենոսին, որը հոր գերեվարությունից հետո հռչակվեց կայսր (260-268):*

*5. Նկատի ունի հռոմեական Իլլիրիկ պրովինցիան, որը զբաղեցնում էր Բալկանյան թերակղզու հյուսիսարևմտյան տարածքը՝ Դանուբի միջին հոսանքից մինչև Ադրիատիկ ծովը:*

*6. Արտավազդ V-ի սույն ակնարկից ակներև է, որ Հայաստանը, իբրև դաշնակից Պարսկաստանի, մասնակցել է այս պատերազմին ընդդեմ Հռոմի:*





## ԲԱԺԻՆ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ

## ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐԸ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՀԱՂՈՐԴՄԱՄԲ

*Հնագույն շրջանում հայ ժողովրդական բանահյուսության մեջ տիրապետողը առասպելներն էին՝ բնապաշտական պատկերացումներով և դիցաբանական գունավորումներով հանդերձ: Բայց արդեն Ք. ա. II դարի սկզբներից սկսած մինչև Ք. հ. III դարի վերջերը հայ ժողովրդական բանահյուսության հիմնական բովանդակությունը դառնում են պատմական եղելությունները, որոնցում արտացոլվում են հայ ժողովրդի պայքարը արտաքին թշնամիների դեմ, ժողովրդի ներքին կյանքը, նրա հավատալիքները, սովորույթները և կենցաղը:*

*Ինչպես հնագույն առասպելների առանձին փշրանքներ, այնպես էլ հայ ավանդական վիպական շարքի վերաբերյալ մեզ հասած հատվածները, ժամանակին գրի է առել Պատմահայր Խորենացին ու ավանդել հետագա սերունդներին, փրկել դրանք անդառնալի կորստից: Մովսես Խորենացին այդ ավանդույթներն ու զրույցները լսել է Գողթան գավառի ժողովրդական երգիչներից, քաղել հնագույն մատյաններից և դրանք զետեղել իր Պատմության էջերում: Որոշ դեպքերում Խորենացին դրանք բերում է բառացի, շատ հաճախ էլ վերապատմելով բովանդակությունը՝ կատարելով միջամտություններ ու տալով բացատրություններ: Այստեղ զետեղված Գողթան երգերից հնագույնը Վահագնի ծննդին նվիրված քերթությունն է:*

*Մենք ամբողջությամբ բերել ենք նաև Արտաշես I-ի անվան շուրջ հյուսված վեպը, որն այս շարքում ամենից ավելի ամբողջական ու հղկված: Գողթան երգերի ստորև բերված հատվածները տալիս ենք Ա. Տ. Մնացականյանի թարգմանությամբ:*

## Վահագնի ծնունդը

(Մովսես Խորենացի, գիրք Ա, գլ. ԼԱ)

*Երկնում էր  երկինքը,*
*Երկնում էր երկիրը,*
*Երկնում էր և ծովը ծիրանի.*
*Ծովում երկունքով էր բռնված*
*Նաև եղեգնիկը կարմրիկ:*
*Եղեգնի փողից ծո՛ւխ էր ելնում,*
*Եղեգնի փողից բո՛ց էր ելնում,*
*Եվ բոցի միջից*
*Վազում էր խարտյաշ մի պատանյակ.*
*Հո՛ւր էին վարսերը նրա,*
*Բո՛ց էր մորուքը նրա,*
*Իսկ աչքերն էին արեգակներ[1]:*

## Արտաշես և Սաթենիկ

(Մովսես Խորենացի, գիրք Բ, գլ. Ծ)

*Քեզ եմ դիմում, ո՛վ քաջ Արտաշես,*
*Որ հաղթեցիր ալանաց քաջ ազգին[2],*
*Ե՛կ համաձայնիր խոսքին ալանների գեղաչվի դստեր,*
*Վերադարձրու այդ պատանին,*
*Քանզի քինախնդրության պատճառով*
*Դյուցազունն իրավունք չունի*
*Վերացնել ուրիշ դյուցազունների զարմը,*
*Ոչ էլ նրանց ծառայեցնելով,*
*Ստրուկների դասը դասել,*
*Եվ երկու քաջ ազգերի միջև՝*
*Սերմանել մշտատև թշնամանք:*

* * *

*Կամ որտեղի՞ց պիտի տա Արտաշեսը քաջ*
*Հազար հազարներ*
*Եվ բյուր բյուրեր՝*
*Քաջազգի ալանների կույս օրիորդի դիմաց[3]:*



*Անահիտի բրոնզաձույլ արձանի գլուխը*

* * *

*Հեծավ Արտաշես արքան արի՝ իր սևուկին գեղեցիկ*
*Եվ հանեց շիկափոկ պարանը ոսկեօղ*
*Եվ սրաթև արծվի պես անցավ գետը*
*Եվ նետեց շիկափոկ պարանը ոսկեօղ,*
*Օղակեց իրանը ալանաց օրիորդի,*
*Խիստ ցավեցրեց օրիորդի իրանը նուրբ*
*Եվ հասցրեց փութով իր բանակը նրան[4]։*

* * *

*Ոսկու անձրև է տեղում*
*Արտաշեսի փեսայության ժամանակ.*
*Մարգարիտ էր տեղում*
*Սաթենիկի հարսնության ժամանակ[5]։*

## *Արտաշես և Արտավազդ[6]*

(Մովսես Խորենացի, գիրք Ա, գլ. Լ; գիրք Բ, գլ. ԿԱ)

*Եվ ասում են, թե Արտավազդն՝*
*Այն քաջ որդին Արտաշեսի,*
*Տեղ չգտավ Արտաշատում*
*Իր ապարանքը հիմնելու,*
*Քշեց, գնաց մարերի մեջ*
*Եվ Մարակերտը կառուցեց*
*Շարուր կոչվող դաշտավայրում[7]։*

* * *

*Ո՞վ կտար ինձ ծխանի ծուխ*
*Եվ առավոտ Նավասարդյան,*
*Եղնիկների վազք, եղջերուների սլացք,*
*Որ մենք փո՛ղ փչեինք, և թմբո՛ւկ խփեինք*
*Արքայակա՛ն ծեսով[8]։*

* * *

*Դու գնացիր*
*Եվ ողջ երկիրը տարար քեզ հետ,*
*Ես ավերակների վրա ինչպե՞ս թագավորեմ[9]։*

* * *

*Եթե դու որսի ելնես*
*Ազատ Մասիսն ի վեր,*
*Թող քաջքերը բռնեն քեզ,*
*Տանեն Ազատ Մասիսն ի վեր,*
*Որ այնտեղ մնաս*
*Եվ լույս չտեսնես[10]։*

*1. Վահագնը հայկական հնագույն աստվածներից մեկն է։ Համարվել է ամպի, անձրևի և ամպրոպի աստված (տե՛ս 502-րդ էջ, ծան. № 8)։ Վահագնը համադր - վում է հնդկական Ինդրա, պարսկական Վերեթրագնա, պահլավական Վահրան ամպրոպի աստվածներին։ Ըստ դիցաբանության, Վահագնը սիրո և գեղեցկության աստվածուհու՝ Աստղիկի ամուսինն էր. նրա ոսկեձույլ արձանը գտնվում էր Աշտիշատի Վահեվանյան մեհյանում։ Ինչպես իր զուգահեռը կազմող հին արևելյան ամպրոպի մյուս աստվածները, այնպես էլ Վահագնը, կռվում է վիշապի հետ և հաղթում նրան։ Այստեղից էլ «Վիշապաքաղ Վահագն» արտահայտությունը։ Հելլենիստական դարաշրջանում Վահագնը համադրվել է հունական Հերակլեսին։*

*2. Ավանդազրույցի համաձայն, Հյուսիսային Կովկասի լեռնաբնակ ալանական ցեղերը գրավելով Վրաստանը, անցնում են Կուր գետը և ներխուժում Հայաստան։ Հայոց Արտաշես I թագավորը ջախջախում է ալաններին՝ գերեվարելով նրանց պատանի արքայազնին։ Արտաշեսը մերժում է ալանների թագավորի խնդրանքը՝ հաշտություն կնքելու և գերի արքայազնին ետ վերադարձնելու վերաբերյալ։ Դրանից հետո է, որ ալանների արքայադուստրը, գեղաչյա Սաթենիկը Կուրի հան - դիպակաց ափից դիմում է Արտաշեսին և խնդրում, որ նա իր գերի եղբորն ազատի։ Տեսնելով ալանաց օրիորդին, Արտաշեսը սիրահարվում է նրան։*

*3. Այս խոսքերով ալանների թագավորը մերժում է Արտաշեսի դայակ Սմբատին, որն իր արքայի կողմից խնամիության էր ուղարկվել ալանների մոտ՝ Սաթենիկի ձեռքը խնդրելու։*

*4. Այս հատվածում ցույց է տրվում, թե ինչպես Արտաշեսը, զայրանալով թագավորի մերժումից՝ փախցնում է ալանաց օրիորդին։*

*5. Արտաշեսի և Սաթենիկի հարսանյաց հանդեսի վերաբերյալ բերված այս*

*հատվածը վկայում է հայոց մեջ հնուց ի վեր գոյություն ունեցող այն սովորույթի մասին, որ նորահարսի ու նորափեսայի գլուխներին չաղ էին տալիս դրամներ, մրգեր, ցորեն՝ ի նշան պտղաբերության և արգասավորության:*

*6. Արտավազդը, ըստ Խորենացու մոտ պահպանված ավանդության, Արտաշես I-ի ավագ որդին էր, որը հաջորդում է հորը: Հին հայ վիպական շարքում Արտավազդի կերպարն ամենաբարդն է ու հակասականը: Նրա անվան շուրջ հյուսված առասպելախառն վեպում, որ բերում է Խորենացին, Արտավազդը ներկայացված է որպես չար, նախանձոտ ու դիվական անձնավորություն:*

*7. Այստեղ ըստ երևույթին, ակնարկվում է Արտավազդի պայքարն ընդդեմ Մուրացյան կամ Վիշապազանց տոհմի, որի նահապետ Արգավանը (Արգամ)*



***Հայոց աստվածների սրբավայրը Նեմրութում (Կոմմագենե)***

*ձգտում էր հայոց գահին և դավադրություն էր հյուսում Արտաշեսի դեմ: Ավանդազրույցի համաձայն, Արտավազդը խլում և սեփականացնում է Մուրացյաննե-րի բոլոր տիրույթները՝ Արաքսից հյուսիս գտնվող Շարուրի դաշտավայրը Նախճավանով հանդերձ: Արտավազդը ոչնչացնում է Մուրացյան տոհմը և սպանում նրա նահապետ Արգավանին:*

*8. Ըստ ավանդության, այս խոսքերն Արտաշեսը արտասանել է իր մահից քիչ առաջ՝ դիմելով հարազատներին, մերձավորների ու զինակիցներին: Արտաշեսի վեպից բերված այս գողտրիկ հատվածը պահպանվել է XI դարի նշանավոր մա-*

*տենագիր Գրիգոր Մագիստրոսի մոտ (տե՛ս* ***Կ. Կոստանյանց,*** *Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Աղեքսանդրապոլ, 1910, Թուղթ 33, էջ 87):*

*9. Երբ թաղում էին Արտաշեսին, հեթանոսական սովորության համաձայն, չատերն ինքնասպանություն գործեցին, որպեսզի թաղվեն նրա հետ: Տեսնելով այս ամենը՝ Արտավազդը նախանձում է հորը և նեղսրտած դիմում է նրան այդ խոսքերով:*

*10. Արտաշեսի այս անեծքը, ուղղված չար ու նախանձ որդուն, ըստ վեպի՝ կատարվում է. որսորդության ժամանակ նրան կլանում են Մասիսի վիհերը: Խորենացին գրում է, որ Արտավազդի մասին զրուցում են, թե արգելված մնում է մի քարանձավի մեջ՝ երկաթե շղթաներով կապված: Արտավազդի առասպելը առնչվում է Միհր աստծու առասպելի շարքին:*

## ԽՈՐԵՆԱՑԻՆ ԱՐՏԱՇԵՍ I-Ի ԺԱՄԱՆԱԿ ԱՐՀԵՍՏՆԵՐԻ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԾԹ*

*Որովհետև Արտաշեսի ժամանակ շատ գործեր կատարվեցին, ուստի մենք շատ գլուխների բաժանեցինք, որպեսզի խոսքի երկայնությունը ձանձրալի չդառնա ընթերցողներին. այս վերջին գլուխն էլ նրա համար է, որ հիշատակենք Արտաշեսի ժամանակ կատարված մյուս գործերն էլ: Որովհետև թեպետ նախորդ գլուխներում հիշատակած կարգերն ու գեղեցիկ սովորությունները սահմանվեցին Վաղարշակից[1] և ուրիշ հին թագավորներից, բայց նրանք մեծամեծ արհեստներից ու գիտություններից զուրկ էին մնացել, ավելի կողոպուտների և ասպատակությունների էին հետևում, իսկ այնպիսի գիտությունների կա՛մ անփույթ էին, կա՛մ ձեռնհաս չէին, ինչպես շաբաթներ, ամիսներ, տարվա շրջաններ (սահմանելը), նրանք այսպիսի բաներ չգիտեին, գործ էին ածում ուրիշ ազգերինը: Նույնպես և չկար նավագնացություն մեր երկրի ծովակների վրա, ոչ էլ ճանապարհորդություն գետերով, ոչ ձկնորսության գործիքներ, նույնիսկ երկրագործությունն ամեն տեղ տարածված չէր, այլ քիչ տեղերում. նրանք հյուսիսային ազգերի նման ապրում էին հում մսով և սրա նման բաներով[2]: Այս բոլորը սահմանվեցին Արտաշեսի ժամանակ:*

*1. **Վաղարշակ** – ըստ Խորենացու՝ Հայոց Արշակունյաց հարստության հիմնադիրը (տե՛ս 19-րդ էջ, ծան. № 3):*

*2. Արտաշես I-ի վիպական կերպարը Խորենացու գրչի տակ շատ դեպքերում համընկնում է պատմական ճշմարտությանը, սակայն այս հատվածում Պատմահայրը ակնհայտորեն գունազարդել ու իդեալականացրել է իր սիրելի հերոսի կերպարը: Չի կարելի համաձայնել այն պնդման հետ, թե իբր Արտաշեսից առաջ հայերը ծանոթ չէին տոմարին, նավագնացությանը և այլն: Ինչպես հնագիտական, այնպես էլ մատենագրական բազմաթիվ փաստեր հակառակն են ապացուցում:*

## ՍՏՐԱԲՈՆԸ ԱՆԱՀԻՏ ԴԻՑՈՒՀՈՒ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

### *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ, XI, 14*

*16. Արդ, պարսից բոլոր սրբավայրերը պաշտում են նաև մարերը և հայերը. բայց Անահիտի[1] սրբավայրերը հայերը (պաշտում են) առանձնահատուկ. տարբեր վայրերում[2], և հատկապես Ակիլիսենեում[3] հաստատված են նրա (սրբավայրերը), որտեղ կարգված են ստրուկներ և ստրկուհիներ: Զարմանալին այս չէ, այլ այն, որ ամենաերևելիները դիցուհուն նվիրաբերում են կույս դստրերին, որոնք, ըստ սովորության, երկար ժամանակ դիցուհու մոտ պոռնկանալուց հետո, տրվում են ամուսնության, ոչ ոք անվայել չի համարում այսպիսիների հետ կենակցելը[4]: Նման մի բան պատմում է նաև Հերոդոտոսը լյուդուհիների[5] մասին. քանզի նրանք բոլորն էլ պոռնկանում էին: Նրանք այնքան բարեհաճ են վերաբերվում սիրեկաններին, որ թե՛ հյուրընկալություն են շնորհում և թե՛ փոխադարձ նվերներ տալիս, բազմապատիկ առավել, քան ստանում են, (քանզի) նրանց ապահովում են բարեկեցիկ տները: Նրանք օտարներից պատահածին չեն ընդունում, այլ առավելապես (իրենց) հավասար աստիճանի եղողներին:*

*1. Անահիտը պտղաբերության, արգասավորության, մայրության, Լուսնի, Հայաստան երկրի և Արտաշատ մայրաքաղաքի հովանավորող աստվածուհին էր:*

*2. Աղբյուրներում հիշատակվում են Անահիտի մեհյանները Արտաշատ, Արմավիր, Աշտիշատ, Աթոռն Անահտա, Դարբնաց քար, Բագարան, Անահտաձոր և այլ վայրերում:*

*3. Ակիլիսեննեն հայկական Եկեղիք կամ Եկեղյաց գավառն է, որի Երիզա (այժմ Երզնկա) ավանում էր գտնվում Անահիտի գլխավոր մեհյան: Այս շրջանում նրա պաշտամունքն այնքան էր տարածված, որ ամբողջ գավառը և քիչ հեռվում գտնվող Կապույտ (այժմ՝ Կոպ-Դաղ) լեռնաշղթան կոչվում էին նաև Անահտական:*

*4. Ինչպես ակներև է, բարձրաշխարհիկ օրիորդների կրոնական այս հետերիզմը, որը կապված էր Անահիտի պաշտամունքի հետ, շատ ավելի հին ժամանակներում գոյություն ունեցած խմբամուսնության մնացուկ էր:*

*5. **Լյուդիա** – պետություն Փոքր Ասիայում՝ Փռյուգիայի և Էգեյան ծովի միջև:*

## ԱՆԱՀԻՏ ԴԻՑՈՒՀՈՒ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ՊԼԻՆԻՈՍ ԱՎԱԳԻ

*ԲՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ, ԳԻՐՔ XXXIV*



*Տիգրանակերտի (Արցախի) պեղումներից*

*Ասում եմ, որ ոսկեձույլ առաջին արձանը, որ նախորդել է նույնիսկ Հոլոսփյուրատոն[1] բրոնզաձույլ արձաններին, կանգնեցվել է Անաիտիս աստվածուհու տաճարում: Մենք ցույց ենք տվել[2], թե որ երկրին[3] է պատկանում այդ անունը: Արձանը մեծ պաշտամունքի առարկա է այդ ժողովուրդների մոտ: Այն տարվել է որպես ավար պարթևների դեմ Մարկոս Անտոնիոսի մղած պատերազմի ժամանակ[4]: Այդ կապակցությամբ պատմում են բոնոնիացի մի վետերանի հայտնի սրախոսությունը. նրա մոտ հյուր էր Ավգուստոսը[5], և ճաշի ժամանակ կայսրը նրան հարցրեց՝ ճի՞շտ է արդյո՞ք, որ այդ արձանը սրբապղծող առաջին մարդը մահացել է կուրանալուց և անդամալույծ լինելուց հետո: Վետերանը պատասխանեց, որ Ավգուստոսի պատվին տրված ճաշը հենց աստ-*

վածուհու արձանի մեկ ազդրից էր, որ հենց ինքն էր այդ արձանի առաջին հափշտակողը, և իր ամբողջ հարստությունը այդ ավարի շնորհիվ էր գոյացել:

1. **Հոլոսփյուրատոն** – բառացիորեն նշանակում է «մուրճով կոփված»:

2. Պլինիոս Ավագը նկատի ունի «Բնական պատմության» V գրքի 20-րդ գլուխը, որտեղ խոսում է Անաիտիս գավառի մասին (տե՛ս 290-րդ էջ, ծան. № 6):

3. Այսինքն՝ Հայաստանին:

4. Հեղինակը շփոթում է, քանզի Անտոնիոսը այս ոսկեձույլ արձանը Եկեղյաց գավառի Անահիտի տաճարից տարել է ոչ թե Պարթևական, այլ Հայկական արշավանքի ժամանակ, այսինքն՝ Ք. ա. 35 թ. ընթացքում:

5. Խոսքը Հռոմի կայսր Գայոս Օկտավիանոս Օգոստոսի մասին է:

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ ԱՆԱՀԻՏԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

48. Մեծ Հայքի արքա Տրդատի[1] առաջին տարում շարժվեցին եկան, հասան Եկեղյաց գավառը, Երիզա գյուղը, Անահիտի մեհյանը, որպեսզի այնտեղ զոհեր մատուցեն: Երբ անարժան գործը կատարեցին, իջան, տեղավորվեցին այն գետի ափին, որը Գայլ է կոչվում[2]:

49. Թագավորը եկավ մտավ վրանը, ընթրիքի բազմեց. երբ գինովցան, թագավորը հրաման տվեց Գրիգորին[3], որ պսակներ ու ծառերի թավ ճյուղեր[4] նվիրաբերի Անահիտի արձանի բագինին[5]: Սակայն նա հանձն չառավ աստվածների երկրպագության պաշտամունքը կատարել:

53. Ասաց արքան[6]. «Իմացած եղիր, ի չիք դարձրիր այն վաստակը, որ ինձ մոտ ես վաստակել, և որին ես վկա եմ: Արդ՝... բազմաթիվ նեղություններ եմ տալու քեզ, ... բանտ ու կապանք և մահ կտամ..., եթե հանձն չառնես աստվածներին պաշտամունք մատուցել: Մանավանդ այս մեծ Անահիտ տիկնոջը, որը մեր ազգի փառքն է ու կենսատուն, որին բոլոր թագավորներն են պաշտում, մանավանդ Հունաց թագավորը[7]: Նա է բոլոր զգաստությունների մայրը, բարերարը ամբողջ մարդկային բնության և դուստրը՝ մեծ, քաջ Արամազդի[8]:

68. Թագավորն սկսեց խոսել ու ասաց. «... Դու նրանց (հեթա-

նոսական աստվածների) պատիվը զլանալով՝ սուտ արարիչ ես համարում, և որոնք որ ճշմարիտ արարիչներ են, անարգում ես: Նաև մեծ Անահիտին, որով ապրում է և կենդանություն ունի մեր Հայոց երկիրը, ինչպես նաև մեծ և արի Արամազդին, երկնքի և երկրի արարիչին, նրանց հետ և մյուս աստվածներին անշշունջ և անմռունչ կոչեցիր...»:

1. Խոսքը Հայոց Տրդատ III Մեծ Թագավորի մասին է:

2. Գայլ գետը Եփրատի վտակն է, որը թափվում է նրա մեջ՝ Երզնկա քաղաքի մոտ:

3. **Գրիգոր** – խոսքը Գրիգոր Լուսավորչի մասին է:

4. Ագաթանգեղոսի սույն խիստ կարևոր է այն տեսակետից, որ այն ցույց է տալիս, թե Անահիտի պաշտամունքը աղերսվել է ծառերի ու բույսերի պաշտամունքի հետ: Այսպիսով, որպես պտղաբերության աստվածուհի, Անահիտը աղերսվում էր նաև բուսականության հետ:

5. **Բագին** – աստվածներին նվիրված մեհյաններ ու տաճարներ հեթանոսական Հայաստանում: Բագին էին կոչվում նաև մեհյաններում կանգնեցված աստվածների արձանները:

6. Տրդատ III-ը դիմում է Գրիգոր Լուսավորիչին:

7. Անահիտին համադրում ու նույնացնում էին հունական Արտեմիսի և հռոմեական Դիանայի հետ:

8. Արամազդը հայկական հեթանոսական դիցարանի գերագույն աստվածն էր:

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԴԻՑԱՐԱՆԻ ՀԵԼԼԵՆԱԿԱՆԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ

### ԺԲ

(Արտաշեսը) Ասիայում[2] գտնելով Արտեմիդի[3], Հերակլեսի[4] և Ապոլոնի[5] պղնձաձույլ ոսկեզօծ արձանները, բերել է տալիս մեր երկիրը, որպեսզի կանգնեցնեն Արմավիրում: Քրմապետները, որոնք Վահունիների[6] ցեղից էին, Ապոլոնի և Արտեմիդի արձաններն առնելով կանգնեցրին Արմավիրում, իսկ Հերակլեսի արձանը, որ Սկյուղեսի և կրետացի Դիպինոսի գործն էր[7], իրենց նախնի Վահագնը[8] համարելով, կանգնեցրին Տարոնում, իրենց սեփական Աշտիշատ գյուղում՝ Արտաշեսի մահից հետո:

Բայց Ելլադայումն էլ վերցնելով Դիոսի[9], Արտեմիդի, Աթենասի[10], Հեփեստոսի[11] և Ափրոդիտեի[12] արձանները՝ ուղարկում է Հայաստան: (Բերողները) դեռ մեր երկրի ներսերը չհասած՝ լսում են Արտաշեսի մահվան բոթը և արձանները փախցնում հասցնում են Անի ամրոցը[13].

քուրմերն էլ արձանների հետ գնալով՝ նրանց մոտ էլ մնում են:

ԺԴ

Իբրև առաջին գործ նա (**Տիգրան Միջինը**[14] – **Պ. Հ.**) կամեցավ մեհյաններ շինել: Իսկ քրմերը, որ եկել էին Հունաստանից, մտածելով, որ իրենց Հայաստանի խորքերը չքշեն, սուտ գուշակություններ հնարեցին, իբրև թե աստվածները հենց նույն տեղում կամենում են բնակվել: Տիգրանն այս բանին համաձայնվելով՝ Օլիմպիական Դիոսի արձանը կանգնեցնում է Անի ամրոցում, Աթենասինը՝ Թիլում[15], Արտեմիդի մյուս արձանը՝ Երիզայում և Հեփեստոսինը՝ Բագայառիճում[16]: Բայց Ափրոդիտեի արձանը, իբրև Հերակլեսի տարփածուի[17], հրամայում է կանգնեցնել հենց Հերակլեսի արձանի մոտ, Աշտիշ տեղում[18]: Եվ զայրանալով Վահունիների վրա, որոնք իրենց սեփական (գյուղում) համարձակվել էին կանգնեցնել իր հոր[19] ուղարկած Հերակլեսի արձանը, զրկում է քրմությունից և պետականացնում է այն գյուղը, որտեղ արձանները դրվել էին:

Եվ այսպես մեհյաններ շինելով և մեհյանների առաջ բագիններ կանգնեցնելով՝ բոլոր նախարարներին հրամայում է զոհեր մատուցել և երկրպագություն անել:

1. Խոսքը Հայոց Արտաշես I թագավորի մասին է:

2. Խորենացին նկատի ունի Փոքր Ասիան:

3. **Արտեմիդ** (Արտեմիս) – լուսնի և որսորդության հունական աստվածուհի, ամուսնության, պտղաբերության և հարսանյաց հովանավորուհի: Համադրվել ու նույնացվել է հայկական Անահիտի հետ:

4. **Հերակլես** – Զևսի և մահկանացու Ալքմենեի որդին, իր տասներկու սխրա - գործություններով դարձավ Հունաստանի հերոսներից մեծագույնը: Վերջում անմահություն ստացավ և որպես աստված ապրում էր Օլիմպոսում: Համադրվել ու նույնացվել է հայկական Վահագնի հետ:

5. Ապոլոնը համարվել է լույսի, արևի, արվեստի, երաժշտության, իսկ սկզբում՝ հոտերի պահպանության աստվածը: Համադրվել ու նույնացվել է հայ - կական Տիր աստծու հետ:

6. **Վահունի** – նախարարական ազգատոհմ, որին ժառանգաբար պատկանում էին հեթանոսական Հայաստանի քրմական բարձր պաշտոնները:

7. Նշանավոր հույն քանդակագործներ, որոնք ապրում էին Ք. ա. VI դարում՝ Արգոսում և Սիկիոնում:

8. **Վահագն** – հայկական դիցարանում ամպի, անձրևի և ամպրոպի աստվածը: Վահագնը քաջություն էր պարգևում հայոց ռազմիկներին: Ըստ դիցաբանու -

*թյան, Վահագնը նախապես մահկանացու լինելով՝ հետագայում էր աստվածացել. համարվում էր Վահունյաց տոհմի նախնին: Համադրվել ու նույնացվել է հունական Հերակլեսի հետ:*

*9. **Դիոս** – հունական դիցարանի գերագույն աստված Զևսն է, աստվածների և մարդկանց տիրակալը: Համարվել է ընտանեկան, հասարակական կարգի գերագույն օրենսդիրը, բնական երևույթների արարիչն ու կառավարիչը: Համադրվել ու նույնացվել է հայկական Արամազդի հետ:*

*10. **Աթենաս** – Զևսի դուստրը, համարվել է հավերժական կուսության, իմաստության և գիտության աստվածուհին: Համադրվել ու նույնացվել է հայկական Նանե աստվածուհու հետ:*

*11. **Հեփեստոս** – Զևսի որդին, կրակի և դարբնության աստվածը: Համադրվել ու նույնացվել է հայկական Միհր աստծու հետ:*

*12. **Ափրոդիտե** – հավերժ ղեռատի և գեղեցկագույն աստածուհի, հունական դիցարանում սիրո և գեղեցկության աստվածուհին: Համադրվել ու նույնացվել է հայկական Աստղիկի հետ:*

*13. **Անի** – ամրոց և հեթանոսական սրբատեղի Բարձր Հայքի Դարանաղյաց գավառում, Երզնկա քաղաքից հարավ-արևմուտք, Արամազդի պաշտամունքի գլխավոր կենտրոնը: Այժմ՝ Քեմախ:*

*14. Խորենացու Տիգրան Միջինը համապատասխանում է Տիգրան II Մեծին:*

*15. **Թիլ** – ավան Բարձր Հայքի Եկեղյաց գավառում, Երզնկայից ութ կիլոմետր հյուսիս-արևմուտք, այստեղ էր գտնվում Նանե աստվածուհու մեհյանը:*

*16. **Բագայառիճ** (Բագառիճ) – ավան Բարձր Հայքում՝ Կարինից արևմուտք: Այստեղ էր գտնվում Միհր աստծո մեհյանը:*

*17. Ըստ դիցաբանության, Ափրոդիտեն Հերակլեսի սիրուհին էր, ինչպես հայ - կական Աստղիկը՝ Վահագնի:*

*18. **Հաշտ** (Հաշտիշատ) – Աշտիշատ ավանն է՝ Մեծ Հայքի Տարոն նահանգում, Արածանի գետի աջ ափին: Աշտիշատը հեթանոսական Հայաստանի կրոնական գլխավոր կենտրոններից մեկն էր: Այստեղ էին գտնվում Անահիտի, Աստղիկի և Վահագնի մեհյանները: Աշտիշատը Վահունի քրմական-նախարարական ընտանիքի ժառանգական սեփականությունն էր:*

*19. Ըստ Խորենացու, Տիգրան Միջինի հայրը Արտաշես I-ն էր:*

## ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՐՎԱՆԴ ՎԵՐՋԻՆԻ ՕՐՈՔ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԺԲ*

### ԵՐՎԱՆԴԱՇԱՏ ՔԱՂԱՔԻ ՇԻՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Սրա[1] ժամանակ արքունիքը Արմավիր[2] կոչված բլրից փոխադրվում է, որովհետև Արաքս գետը հեռացել էր, և ձմեռն երկարելիս, երբ հյուսիսային ցուրտ քամիներ էին փչում, վտակը սառչում էր բոլորովին, և թագավորանիստ տեղի համար խմելու բավական ջուր չէր ճարվում։ Սրանից Երվանդը նեղվելով, մանավանդ մի ավելի ամուր տեղ փնտրելով՝ արքունիքը տեղափոխում է դեպի արևմտյան կողմը, միակտուր ապառաժ բլրի վրա, որը չրջապատում է Արաքսը, իսկ դիմացից էլ հոսում է Ախուրյան գետը։ (Երվանդը) բլուրը պարսպում է, իսկ պարսպից ներս շատ տեղերում քարեր կտրել տալով, իջեցնում է մինչև բլրի հատակը, գետի (մակերևույթին) հավասար, այնպես որ գետից ջրերը հոսեն այդ փորված տեղը, խմելու ջուր մատակարարելով։ Միջնաբերդն ամրացնում է բարձր պարիսպներով, պարիսպների մեջ պղնձե դռներ է դնում և երկաթե սանդուղքներ ներքևից մինչև վեր, մինչև դուռը. սանդուղքի վրա, աստիճանների միջև, գաղտնի որոգայթներ է չինում, որպեսզի եթե մեկը կամենա գաղտնի բարձրանալ թագավորին դավելու նպատակով, բռնվի։ Սանդուղքը, ասում են, երկու տեսակ էր սարքված, մեկը ցերեկվա ճանապարհ արքունի սպասավորների և ընդհանրապես ելումուտի համար, իսկ մյուսը գիշերային էր և դավադիրների դեմ[3]։*

### *Խ*

### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՇԻՆԵՑ ԿՈՒՌՔԵՐԻ ՔԱՂԱՔ ԲԱԳԱՐԱՆԸ

*Բայց Երվանդն իր քաղաքը շինելով՝ Արմավիրից այնտեղ փոխադրեց ամեն ինչ, բացի կուռքերից, որովհետև իր համար օգտակար չհամարեց նրանց էլ իր քաղաքը փոխադրել, որ միգուցե երբ ժողովուրդը զոհաբերության համար այնտեղ գա, քաղաքն զգուշությամբ չպահվի։ Ուստի նրանից հյուսիս, մոտ քառասուն ասպարեզ հեռու,*

*Ախուրյան գետի վրա, շինեց մի փոքր քաղաք նման իր քաղաքին և կոչեց Բագարան[4], այսինքն՝ թե բագիններն այնտեղ են տեղավորված. և այնտեղ փոխադրեց Արմավիրում եղած բոլոր կուռքերը: Շինեց նաև մեհյաններ և իր Երվազ եղբորը քրմապետ նշանակեց:*

## *ԽԱ*

### ԾՆՆԴՈՑ ԿՈՉՎԱԾ ԱՆՏԱՌԻ ՏՆԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Տնկում է նաև մի մեծ անտառ գետի հյուսիսային կողմում, պարիսպներով ամրացնում է և ներսում արգելափակում է արագավազ այծյամների, եղնիկների և եղջերուների ցեղեր, ցիռեր[5], վարազներ, որոնք աճելով ու բազմանալով անտառը լցրին, և նրանցով թագավորն ուրախանում էր որսի օրերին: Անտառը նա կոչում է Ծննդոց անտառ[6]:*

## *ԽԲ*

### ԵՐՎԱՆԴԱԿԵՐՏ ԿՈՉՎԱԾ ՁԵՌԱԿԵՐՏԻ ՄԱՍԻՆ

*Ինձ համար քաղցր է պատմել նաև գեղեցիկ Երվանդակերտ[7] դաստակերտի մասին, որ նույն Երվանդը շինեց գեղեցիկ և շքեղ հորինվածքով: Որովհետև մեծ հովտի միջին մասը լցնում է բնակչությամբ և պայծառ շինություններով, լուսավոր, ինչպես աչքի բիբը, իսկ բնակության շուրջը կազմում է ծաղկանոցներ և բուրաստաններ, ինչպես բբի շուրջը աչքի մյուս բոլորակը: Իսկ այգիների բազմությունը նմանվում էր խիտ արտևանունքի գեղեցիկ գծին, որի հյուսիսային կողմի կամարաձև դիրքը իսկապես համեմատվում էր գեղեցիկ կույսերի հոնքերին: Իսկ հարավային կողմից հարթ դաշտերը (հիշեցնում էին) ծնոտների գեղեցիկ ողորկությունը: Իսկ գետն իր երկու ափերի բարձրություններով պատկերանում էր մի բերան, իր երկու շրթունքներով: Եվ այս գեղեցիկ դիրքը կարծես անթարթ հայացքն ուղղել է թագավորանիստ բարձրավանդակի վրա: Արդարև բերրի և թագավորական դաստակերտ:*

*Երվանդն այս բոլոր շինածները Տրդատ Մեծը[8] պարգևում է Կամսարականների ցեղի մարդկանց, իբրև իր մտերիմներին և Արշակունյաց ցեղի արյունակիցներին:*

*1. Խոսքը վերաբերում է Հայոց Երվանդ IV Վերջին թագավորին:*

*2. **Արմավիր** – հին Հայաստանի մայրաքաղաքներից մեկը, գտնվում էր Երասխի ձախ ափին՝ Արարատյան դաշտում: Խորենացին Արմավիրի հիմնադրումը վերագրում է Հայկ նահապետի թոռ Արամայիսին:*

*3. Երվանդաշատը Երվանդունիների վերջին մայրաքաղաքն էր, գտնվում էր Երասխաձոր գավառում՝ Երասխ գետի ձախ ափին, նրա և Ախուրյանի միախառնման տեղում: Այժմ Երվանդաշատ գյուղը՝ Արմավիրի մարզում:*

*4. **Բագարան** – պաշտամունքային կենտրոն և բերդաքաղաք Այրարատյան աշխարհի Արշարունյաց գավառի հյուսիսարևելյան ծայրում՝ Ախուրյանի աջ ափին:*

*5. **Ցխու** – վայրի էշ:*

*6. **Ծննդոց անտառ** – ուսումնասիրողները ենթադրում են, որ այս անտառը ընկած էր Արաքսի ձախ ափին՝ Արմավիր ու Երվանդաշատ քաղաքների միջև:*

*7. **Երվանդակերտ** – քաղաք Այրարատ նահանգի Երասխաձոր գավառում՝ Երասխ և Ախուրյան գետերի միախառնման վայրից քիչ հեռու:*

*8. Նկատի ունի Մեծ Հայքի թագավոր Տրդատ III Մեծին:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՊԱՏՄԱԳԻՐ ՈՂՅՈՒՄՊ ՔՐՄԻ ՄԱՍԻՆ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

### *ԺԸ*

***Այն ժամանակ Սմբատը[1] Երվազի[2] ծառաներին, որ գերել էր Բագարանից[3], տանում բնակեցնում է Մասիսի թիկունքում (իր) ձեռակերտում, որը միևնույն անունով կոչեց Բագարան: Հետո անցնում գնում է Պարսկաստան, ընծաները Դարեհին տանելով, հռոմեական տերության նկատմամբ անփույթ լինելով: Իսկ երբ Սմբատը գնում է Պարսկաստան, Հայոց սահմաններն են գալիս կայսեր հարկահանները ծանր զորքով: Արտաշեսը հարկերը կրկին վճարելով և աղաչելով հաշտեցնում է: Այս բանը մեզ հաստատապես պատմում է Հանիի[4] Ուղյուպ քուրմը[5], որ գրել է մեհենական պատմություններ և ուրիշ շատ գործեր, որ մենք պատմելու ենք, որին վկայում են նաև պարսից մատյանները և Հայոց վիպասանների երգերը:***

*1. Խոսքը Արտաշես I-ի դայակ և զորավար Սմբատ Բագրատունու մասին է:*

*2. Երվազը Երվանդ Վերջինի եղբայրն էր, Հայոց քրմապետը:*

*3. **Բագարան** – պաշտամունքային կենտրոն Ախուրյանի աջ ափին, որը կառուցել էր Երվանդ Վերջինը:*

4. **Հանի** (Դարանաղյաց Անի) – ամրոց և պաշտամունքային խոշոր կենտրոն հին Հայաստանում՝ Դարանաղի գավառում, Եփրատ գետի ափին:

5. Ուղյուպ (Ողյումպ) քուրմի ու նրա Պատմության մասին մանրամասն տե՛ս **Գ. Խ. Սարգսյան,** Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, գլուխ երրորդ:

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԲԱՆԱՍՏԵՂԾ ՎՐՈՒՅՐԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ

### ԾԳ

*Իսկ Արտավազդը[1] Սմբատի[2] գնալուց հետո հորից[3] ստանում է բոլոր գործերի իշխանությունը, որին փափագում էր: Սրա վրա նրա եղբայրներն[4] իրենց կանանցից գրգռվելով սկսեցին նախանձել, ուստի Արտաշեսը Վրույրին, որ իմաստուն և բանաստեղծ մարդ էր, նշանակում է հազարապետ և նրան է վստահում արքունական տան բոլոր գործերը, իսկ Մաժանին նշանակում է Անիում Արամազդի կուռքի քրմապետ:*

*1. Խոսքը Արտաշես I-ի ավագ որդու՝ գահաժառանգ Արտավազդի մասին է:*

*2. Խոսքը Սմբատ Բագրատունու մասին է:*

*3. Այսինքն՝ Արտաշես I-ից:*

*4. Ըստ Խորենացու մոտ պահպանված ավանդության. Արտաշես I-ը ունեցել է վեց որդի՝ Արտավազդ, Վրույր, Մաժան, Զարեհ, Տիրան, Տիգրան:*

## ՓԻԼՈՍՏՐԱՏՈՍԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԳՐԵՐՈՎ ՄԱՆՅԱԿԻ ՄԱՍԻՆ

***Փիլոստրատոսը Կարակալլա կայսեր (211–217) ժամանակակից մատենագիր է: Մանյակի վրա եղած հայկական գրերի մասին նա հաղորդում է իր «Վարք Ապոլոնիոս Դիանացու» («De vita Apollonis Tianei») աշխատության մեջ: Թարգմանված և հրատարակված է Ի. Հարությունյանի «Հայոց գրերը» աշխատության մեջ (Թիֆլիս, 1892, էջ 252), որից և մեջ ենք բերում քրեստոմատիայում:***

* Կազմեց Պ. Հ. Հովհաննիսյանը:

*ՎԱՐՔ ԱՊՈԼՈՆԻՈՍ ԴԻԱՆԱՑՈՒ*

*Ինչ որ մեր Տավրոսի մասին ասում են, և որ երկար ժամանակ ոչ ոք չէր հավատում, թե նա Հայաստանի սահմաններից էլ անցնում է, հաստատում են այն հովազները, որ, ինչպես գիտեմ, բռնվում են համեմունքով առատ Պամփյուլիայում, որովհետև այս կենդանիները սիրում են անուշ բուրմունք, ուստի դուրս են գալիս Հայաստանից և դիմում այն կողմերը, որտեղից քամին բերում է այդ անուշ հոտը: Պատմում են նույնպես, որ մի անգամ Պամփյուլիայում բռնվել է մի հովազ, որի ոսկյա մանյակի վրա գրված էր հայերեն տառերով հետևյալը. Արշակ Թագավոր՝ Նյուսիա աստծուն, այսինքն՝ Նյուսիա աստծուն նվեր Արշակ Թագավորից: Այս Արշակն[1] այն ժամանակ Հայոց Թագավորն էր և յուր բռնած հովազը, այդ կենդանու մեծության պատճառով, նվիրել էր Դիոնիսոսին[2]: Դիոնիսոսը հնդկական Նյուսիայի պատճառով հնդկացիներից և արևելյան ժողովուրդներից կոչվում էր Նյուսոս: Այս կենդանին միաժամանակ իրեն բոլորովին ընտանի եղավ և թույլ էր տալիս իրեն ձեռքով շոշափել և փաղաքշել, սակայն երբ գարունն եկավ, երբ հովազները նույնպես հաղթահարվում են սիրուց, արուի պահանջ զգալով, փախավ դեպի լեռները և յուր հետ տարավ նաև յուր զարդը, ապա գրավվելով համեմունքի բուրմունքից, բռնվեց ստորին Տավրոսի վրա:*

*1. Ուսումնասիրողներից ոմանց հայտնած այն կարծիքը, որ Ք. հ. I դարում Արշակ անունով Հայաստանի Թագավոր չի եղել և նրանց փորձերը՝ դրա հիման վրա արժեքազրկելու Փիլոստրատոսի այս տեղեկությունը, ճիշտ չէ. հավանական է, որ հեղինակը նկատի է ունեցել Պարթևաց Թագավոր Արտավանի որդի՝ Հայոց Արշակ I (34-35) Թագավորին, որի մասին տեղեկություն է հաղորդում Տակիտոսը (տե՛ս «Տարեգրություններ», VI, էջ 31):*

*2. Դիոնիսոսը, ըստ հին հունական առասպելաբանության, համարվել է Զևսի որդին, խաղողագործության աստվածը:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԱՆԻԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԵԹԱՆՈՍԱԿԱՆ ԱՐԽԻՎԻ ՄԱՍԻՆ

*ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ, ԳԻՐՔ Բ*

*ԿԶ*

*Մեզ այս բաները պատմում է Բարդածանը[1], որ Եդեսիայից էր: Որովհետև նա վերջին Անտոնինոսի ժամանակ[2] պատմագիր հանդիսացավ: Նա առաջ հետևում էր Վաղենտինիանոսի աղանդին[3], որը նա հետո անարգեց, ստությունը երևան հանելով, սակայն ինքը ճշմարտության չհանգեց, այլ միայն նրանից զատվելով՝ իրենից նոր աղանդ հնարեց: Բայց պատմության մեջ չստեց, որովհետև հզոր էր խոսքով. նա նույնիսկ համաձայնվեց թուղթ գրել Անտոնինոսին, շատ բան գրեց մարկիոնացիների աղանդի և ճակատագրի դեմ և մեր երկրի կուռքերի պաշտամունքի մասին:*

*Որովհետև նա մեր կողմերն եկավ՝ հուսալով, թե կկարողանա որևէ հետևող գտնել վայրենի հեթանոսներիս մեջ, բայց երբ ընդունելություն չգտավ, մտավ նա Անի ամրոցը, կարդաց մեհենական պատմությունը, որի մեջ նաև թագավորների գործերը: Նա իր կողմից ավելացրեց իր ժամանակի անցքերը, բոլորը թարգմանեց ասորերենի և ապա նրանից հունարենի: Իր մատյանում՝ մեհենական պաշտամունքի վերաբերմամբ պատմում է, թե հայոց թագավոր Տիգրան Վերջինը պատվել է իր եղբոր՝ Մաժան քրմապետի գերեզմանը Բագավանում, Բագրևանդ գավառում, գերեզմանի վրա բագին շինելով, որպեսզի այդտեղի զոհերից վայելեն բոլոր անցորդները և հյուրեր ընդունվեն գիշերելու համար: Հետո Վաղարշն այդ տեղում ժողովրդական տոն սահմանեց նոր տարվա սկզբին, Նավասարդի ամսագլխին: Մենք այս պատմությունից առանք ու գրեցինք քեզ Արտավազդի թագավորությունից մինչև Խոսրովի արձան (կանգնեցնելը):*

*1. Բարդածանը (154-223) ասորի հեղինակ է, համարվում է ասորական քրիստոնեական մատենագրության հիմնադիրներից մեկը:*

*2. Ենթադրվում է, որ սա Անտոնինոսների հարստության վերջին կայսր Կոմմոդոսն է (180-192):*

*3. Նկատի ունի II դարում գործող Վալենտինիանոսի գնոստիկյան ուսմունքին հետևող աղանդավորներին:*

## ՀԻՊՊՈԼԻՏՈՍ ՊԱՏՄԻՉԸ ՀԱՅԵՐԻ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

***Հիպպոլիտոսը հռոմեացի մատենագիր է: Նա ժամանակակից է Ալեքսանդր Սևերոս կայսրին (222-235): Մեզ հետաքրքրող աշխատությունը, որի մեջ հիշատակություն կա հայկական դպրության մասին, գրի է առնված Սևերոսի գահակալության 13-րդ տարում, այ-***



**Գառնիի տաճարը**

***սինքն՝ 234–235 թվականներին։ Հեղինակն իր աշխատության մեջ, առանձին գլխի տակ, թվարկել է այն ժողովուրդներին, որոնք դպրություն ունեն, և ահա նրանց մեջ հիշում է նաև հայերին։ Թարգմանված է «*Hipollitus** Werke, IV Bd. Die Chronik, Hergesteiit von **A. Bauer**, Leipzig, 1929, էջ 58» ***հրատարակությունից, որը կատարել է Ա. Գ. Աբրահամյանը։***

*ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

*Սրանցից նրանք, որոնք դպրություն ունեն, հետևյալներն են. եբրայեցիները, լատինացիները, որով և հռոմեացիներն են վարում, սպանացիները, հույները, մարերը և հայերը*[1]*։*

*1. Հիպպոլիտոսի այս հատվածը թարգմանաբար բերել է նաև Անանիա Շիրակացին իր «Ժամանակագրության» մեջ։*

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՈՒՍՄԱՆ ՄԵՀՅԱՆԻ ԱՌԿԱՅՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ*

*778. Ապա (Տրդատ) թագավորն իսկույն տիրաբար հրաման տվեց, ամենքի հավանությամբ, գործը երանելի Գրիգորի ձեռքը հանձնելու, որպեսզի նախկին հայրենի, հնամենի և նախնիների ու իր կողմից Աստված անվանված չաստվածները անհիշատակ դարձնի, մեջտեղից ջնջի: Ապա ինքն իսկ թագավորը, ամբողջ զորքով հանդերձ, Վաղարշապատ քաղաքից չարժվեց գնաց Արտաշատ քաղաքը, ավերելու այնտեղ Անահիտ դիցուհու բագինը և այն, որ Երազամույն կոչված տեղերում էր գտնվում: Նախ ճանապարհին հանդիպեցին քրմական գիտության դպիր, Որմզդի գրչի Դիվան կոչված, երազացույց, երազահան պաշտամունքի Տիր աստծու իմաստության ուսման մեհյանը և ամենից առաջ սկսեցին այն քանդել, այրել, ավերել:*

## ԳԵՎՈՐԳ ԱՍՈՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԸ ՀԱՅՈՑ ԳՐԵՐԻ ՄԱՍԻՆ

***Գեորգ Ասորին VIII դարի առաջին կեսի ասորի մատենագիր է: Նա առավելապես հայտնի է «Արաբների եպիսկոպոս» մականունով: Նշանավոր է 714 թ. հին ասորերեն լեզվով Յեշուա ճգնակյաց քահանային գրած թղթով: Թուղթը բաղկացած է ընդարձակ ինը գլուխներից, որոնք արծարծում են կրոնական և մատենագրական զանազան հարցեր: Մեզ համար հատկապես կարևոր նշանակություն ունեն: 1, 2, 3 և 5-րդ գլուխները, որոնք զգալի տեղեկություններ են պարունակում հայկական մատենագիտության հետ սերտ աղերսակցություն ունեցող կամ հարակից հարցերի վերաբերյալ: Թղթի 5-րդ գլուխը, որն ամբողջությամբ վերաբերում է Գրիգոր Լուսավորչին, պայմանականորեն կարելի է համարել վերջինիս կենսագրությունը:***

***Թուղթը հրատարակել է Պ. Լագարդը*** (P. Lagardii Analecta Syriaca, Londoni, 1858)***: Ստորև բերված հատվածը տալիս ենք Թղթի հինգերորդ գլխի հայերեն թարգմանությունից, որն իրականացրել է Հ. Տաշյանը («Ագաթանգեղոս առ Գեորգայ Ասորի եպիսկոպոսին», Վիեննա, 1891, էջ 4):***

## *ԹՈՒՂԹ*

### ԳՐԻԳՈՐ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ, ՈՐՆ ԱՇԱԿԵՐՏԵՑ ՀԱՅԵՐԻ ՄՈՏ

*Գրիգորիոսը, նա ով աշակերտեց Հայերին, ո՛վ ուսումնասեր[1], Հոռոմայեցի էր ազգով, ինչպես որ հայտնի է իր կենսագրության[2] խոսքերից: [Գրիգորիոսը] տղայության ժամանակ եկավ Հայոց աշխարհ՝ կամ քրիստոնյաների դեմ Դիոկղետիանոս կայսեր հարուցած հալածանքների[3] և կամ ուրիշ՝ մեզ անծանոթ պատճառով: Եվ երբ Հայոց երկրում ապրեց և ուսանեց նրանց գիրն ու լեզուն՝ իր անունը տարածվեց և հռչակվեց այնպես, որ Տրդատ արքայի, որն այն ժամանակներում թագավոր էր Հայոց աշխարհի վրա, մերձավորներից և ծառաներից մեկը եղավ[4]:*

*1. Հեղինակը դիմում է Յեշու քահանային, որին ուղղված է Թուղթը:*

*2. **«Ինչպես հայտնի է իր կենսագրության խոսքերից»** - ասորական բնագիրն ունի՝ «որպէս յայտ է ի բանից պատմութեանն որ ի վերայ նորա»: Ենթադրելի է, որ հեղինակն ակնարկում է Ագաթանգեղոսի Պատմությունը, որը Գրիգոր Ասորու օրոք (VIII դար) պարունակել է այլևայլ մանրամասներ, որոնք այժմ բացակայում են առկա բնագրում: Չի բացառվում, որ գոյություն ունեցած լինի Գրիգոր Լուսավորչի մեկ այլ՝ Ագաթանգեղոսի գործից տարբերվող վարք, որը մեզ չի հասել:*

*3. Գայոս Վալերիոս Ավրելիոս Դիոկղետիանոս կայսեր օրոք (284-305) քրիստոնյաների հալածանքները Հռոմում հասան իրենց բարձրակետին:*

*4. Ակնհայտ է, որ իրադարձությունները վերաբերում են 287 թ. հետո ընկած ժամանակաշրջանին:*





# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ*

## *ՍԱՐԴՈՒՐՅԱՆ ԱՐՔԱՅԱՏՈՀՄ*

*Արամե (860-843)*
*Լուտիպրի (843-835)*
*Սարդուրի I (835-825)*
*Իշպուինի (825-810)*
*Մենուա (810-786)*
*Արգիշտի I (786-764)*
*Սարդուրի II (764-735)*
*Ռուսա I (735-713)*
*Արգիշտի II (713-685)*
*Ռուսա II (685-645)*
*Սարդուրի III (645-635)*
*Սարդուրի IV (635-625)*
*Էրիմենա (625-617)*
*Ռուսա III (617-609)*
*Ռուսա IV (609-590)*

## *ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ԱՐՔԱՅԱՏՈՀՄ*

*Երվանդ I Սակավակյաց (580-560)*
*Տիգրան Երվանդյան (560-535)*
*Հյուդարնես I (Ք. ա. VI դ. վերջ)*
*Հյուդարնես II (Ք. ա. V դ. սկիզբ)*
*Հյուդարնես III (Ք. ա. V դ. կես)*
*Արտաշիր (Արտաշես) Ք. ա. V դ. երկրորդ կես*

*Երվանդ II (Օրոնտաս) 404-360*
*Երվանդ III (Օրոնտաս) 331-300*
*...աննես (Ք. ա. III դ. առաջին կես)*
*Երվանդ IV Վերջին (220-201)*

### ԾՈՓՔ-ԿՈՄՄԱԳԵՆԵԻ ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ԱՐՔԱՅԱՏՈՀՄ

*Սամոս (Ք. ա. III դ. առաջին կես)*
*Արշամ (240-220)*
*Աբդիսարես (220-215)*
*Քսերքսես (215-201)*

### ԱՐՏԱՇԵՍՅԱՆՆԵՐԻ ԱՐՔԱՅԱՏՈՀՄ

*Արտաշես I Բարի (189-160)*
*Արտավազդ I (160-115)*
*Տիգրան I (115-95)*
*Տիգրան II Մեծ (95-55)*
*Արտավազդ II (55-34)*
*Արտաշես II (30-20)*
*Տիգրան III (20-8)*
*Տիգրան IV (8-5)*
*Արտավազդ III (5-2)*
*Տիգրան IV և Էրատո (Ք. ա. 2 թ. - Ք. Հ. 1 թ.)*
*Էրատո (6-11)*

### ՄԵԾ ՀԱՅՔԻ ԴՐԱԾՈ ԹԱԳԱՎՈՐՆԵՐ

*Արիոբարզան (2-4)*
*Արտավազդ IV (4-6)*
*Տիգրան V (6)*
*Վոնոն Արշակունի (12-16)*
*Արտաշես III (Զենոն-Արտաշես) 18-34*
*Արշակ I (Սանատրուկ) 34-35*

*Միհրդատ Իբերացի (35-37)*
*Պոլեմոն (38-40)*
*Կոտիս (40-43)*
*Միհրդատ Իբերացի (վերստին) 47-51)*
*Հռադամիզդ (51-54)*
*Տիգրան VI (60-61)*

## *ՄԵԾ ՀԱՅՔԻ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԱՐՔԱՅԱՏՈՀՄ*

*Տրդատ I (66-88)*
*Սանատրուկ I (88-110)*
*Աշխադար (110-113)*
*Պարթամասիր (113-114)*
*Վաղարշ I (117-144)*
Սոհեմոս-Տիգրան (144-161)
Բակուր I (161-163)
Սոհեմոս-Տիգրան (վերստին) 164-186
*Վաղարշ II (186-198)*
*Խոսրով I (198-216)*
*Տրդատ II (217-252)*
Արտավազդ V (252-262)
Որմիզդ-Արտաշիր Սասանյան (262-272)
Ներսեհ Սասանյան (272-293)
*Խոսրով II Մեծ (279-287)*
*Տրդատ III Մեծ (287-330)*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԿԱԶՄՈՂՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ..........................................................................5

## ԲԱԺԻՆ ԱՌԱՋԻՆ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՈՒՄԸ

Հայկական ավանդությունը հայ ժողովրդի ծագման մասին..................9
Վրացական ավանդությունը հայ ժողովրդի ծագման մասին...............26
Հունական առասպելը հայ ժողովրդի ծագման մասին .........................32
Հերոդոտոսի վկայությունը արմենների մասին .....................................35

## ԲԱԺԻՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՀՆԱԳՈՒՅՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀՈՒՄ

Աստվածաշունչը Եդեմի և համաշխարհային ջրհեղեղի մասին.............39
Շումերա-աքադական սկզբնաղբյուրները Հայկական
լեռնաշխարհի ցեղերի ու պետական միավորումների մասին .......43
Հնագույն խուռիերեն արձանագրությունը ..............................................66
Հին ասուրերեն բնագրերը Ք. ա. XIX-XVIII
դարերի Հայկական լեռնաշխարհի ցեղերի մասին...........................67
Խեթական սեպագիր արձանագրությունները
Հայկական լեռնաշխարհի մասին ..........................................................73
Խեթա-լուվիական հիերոգլիֆ արձանագրություն-
ները Հայկական լեռնաշխարհի մասին ............................................86
Ասորեստանյան սեպագիր աղբյուրները Հայկական
լեռնաշխարհի ցեղերի, ժողովուրդների և պետական
կազմավորումների մասին ....................................................................90
Ասուրական արշավանքները դեպի Հայկական

լեռնաշխարհ ըստ Դիոդորոս Սիկիլիացու ......................................138
Հայ-ասուրական և հայ-մարական հա-
բաբերությունններն ըստ Մովսես Խորենացու.................................141
Վանի թագավորության սեպագիր աղբյուրները
Հայկական լեռնաշխարհի և հարևան պետու-
թյունների մասին.........................................................................150
Ք. ա. I հազարամյակի բաբելոնյան սկզբնաղբյուրները
Հայկական լեռնաշխարհի մասին.......................................................190
Աստվածաշունչը Հայաստանի մասին
(Ք. ա. VII–VI դարեր) ................................................................198

## ԲԱԺԻՆ ԵՐՐՈՐԴ

## ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Ք. ա. VII–VI դարերի Հայաստանի պատմության
դրվագներն ըստ Մովսես Խորենացու .................................... .....203
Հայ-մարական փոխհարաբերությունները
Ք. ա. VI դարում ըստ Քսենոփոնի ..................................................206
Տիգրան Երվանդյանի պայքարը Մարաստանի
դեմ ըստ Մովսես Խորենացու..............................................................232
Աքեմենյան Պարսկաստանի դեմ հայ ժողովրդի
պայքարի արտացոլումը Բեհիստունյան
արձանագրության մեջ .......................................................................236
Հերոդոտոսի վկայությունները Հայաստանի մասին.............................241
Հայաստանը ըստ Քսենոփոնի նկարագրության ..................................243
Սատրապական Հայաստանը (Ք. ա. V դ. վերջ)
ըստ Դիոդորոս Սիկիլիացու ...............................................................255
Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքները
և Հայաստանը ........................................................................259
Հայաստանը Ալեքսանդր Մակեդոնացու հաջորդ-
ների օրոք ըստ Դիոդորոս Սիկիլիացու ................................................263
Աղջակալեի երկլեզվյան արձանագրությունը

*Արմենիայի սատրապի մասին ...........................................................266*

*ԲԱԺԻՆ ՉՈՐՐՈՐԴ*

*ԱՐՏԱՇԵՍՅԱՆՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ*

*Դիոդորոս Սիկիլիացին Արտաշես I-ի թագավորության մասին.....................................................................267*
*Արտաշես I-ի պայքարը Երվանդ Վերջինի դեմ և Արտաշեսյան հարստության հաստատվելը Հայաստանում ըստ Մովսես Խորենացու......................................269*
*Պոլիբիոսի վկայությունները Հայաստանի մասին ...............................276*
*Ստրաբոնը Հայաստանի բնաշխարհի և վարչական բաժանումների մասին...................................................279*
*Պլինիոս Ավագը Հայաստանի բնաշխարհի մասին ..............................................................................287*
*Փոքր Հայքը ըստ Ստրաբոնի նկարագրության ..................................... 292*
*Պլուտարքոսը Արտաշատ մայրաքաղաքի հիմնադրման մասին ...........................................................................293*
*Մովսես Խորենացին Արտաշեսյան սահմանաքարերի մասին .....................................................................296*
*Արտաշես I-ի արամեերեն արձանագրությունները...............................296*
*Հայ-սելևկյան պատերազմի (Ք. ա. 165 թ.) ըստ Պորփյուրի և Հիերոնիմոսի ..................................................299*
*Հայկական զորավարություններն Արտաշես I-ի ժամանակ ըստ Մովսես Խորենացու ...................................................301*
*Լեոնտի Մրովելին Արտաշես I-ի հյուսիսային արշավանքների մասին ..........................................................................302*
*Հայոց Արտավազդ I թագավորի հիշատակությունը Պոմպեոս Տրոգոսի մոտ..........................................................310*
*Հայաստանի քաղաքական վիճակը Ք. ա. II–I դարերում ըստ Ստրաբոնի ..........................................................312*
*Պոմպեոս Տրոգոսը Ք. ա. 93 թվականի հայ-պոնտական դաշինքի մասին ......................................................315*

*Տիգրան Մեծը Սելևկյան Ասորիքի*
*թագավոր ըստ Պոմպեոս Տրոգոսի* ......................................................317
*Ուշբաբելոնյան սեպագրական ժամանակա-*
*գրության մի վկայություն Տիգրան Մեծի մասին*..............................318
*Հովսեպոս Փլավիոսը Տիգրան Մեծի կողմից*
*Սելևկյան Ասորիքի նվաճման մասին* ..................................................319
*Պլուտարքոսը Ք. ա. 69-67 թվականների*
*Հայ-Հռոմեական պատերազմի մասին* ................................................323
*Հայ-Հռոմեական պատերազմը ըստ Ապպիանոսի*..................................345
*Մեմնոնը Հայ-Հռոմեական պատերազմի մասին* ...................................352
*Տիգրան Մեծի հաշտությունը Պոմպեոսի*
*հետ ըստ Պլուտարքոսի* ......................................................................355
*Մարկոս Տուլիոս Կիկերոնը (Ցիցերոն)*
*Տիգրան Մեծի մասին* ..........................................................................358
*Կրասսոսի Պարթևական արշավանքը*
*և Հայաստանը ըստ Պլուտարքոսի* ......................................................361
*Դիոն Կասսիոսը Ք. ա. 69-66 թվականների*
*Հայ-Հռոմեական պատերազմի մասին* ..................................................366
*Անտոնիոսի Հայկական արշավանքն*
*ըստ Հովսեպոս Փլավիոսի* ....................................................................378
*Անտոնիոսի Արևելյան արշավանքը*
*և Հայաստանը ըստ Պլուտարքոսի* ........................................................379
*Կրասսոսի և Անտոնիոսի Արևելյան արշա-*
*վանքներն ու Հայաստանը ըստ Դիոն Կասսիոսի* ...............................385
*Խորենացին Տիգրան Միջինի (Երկրորդ) և Ար-*
*տավազդ Երկրորդի գործունեության մասին*...................................391
*Արտաշեսյան հարստության անկումն*
*ըստ Դիոն Կասսիոսի* ...........................................................................399
*«Անկյուրայի կոթողը» Արտաշեսյան հարստության*
*վերջին ներկայացուցիչների մասին* ...................................................402
*Տիգրան V-ը և Տիգրան VI-ը Մեծ Հայքի*
*թագավորներ ըստ Հովսեպոս Փլավիոսի* ............................................404
*Վոնոն Արշակունին Մեծ Հայքի թագավոր*
*ըստ Հովսեպոս Փլավիոսի* ....................................................................405

Պարթևա-հռոմեական հակամարտությունները
Հայաստանում (Ք. հ. I դարի սկզբներին) ըստ
Գայոս Կոռնելիոս Տակիտոսի ........................................................406
Վրացական արքայական տան հավակնու-
թյունը Մեծ Հայքի գահի նկատմամբ ըստ Գա-
յոս Կոռնելիոս Տակիտոսի...........................................................412

## ԲԱԺԻՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Կորբուլոնի բանակի արշավանքը Հայաստան
ըստ Գայոս Կոռնելիոս Տակիտոսի....................................................423
Կորբուլոնի բանակի արշավանքը դեպի Տիգ-
րանակերտ և նահանջը ըստ Գայոս Կոռնելիոս Տակիտոսի...........428
Գայոս Կոռնելիոս Տակիտոսը հռոմեական զոր-
քերի պարտության և Հռանդեայի դաշնագրի մասին.....................434
Տրդատ I Արշակունու գահակալումը Հա-
յաստանում ըստ Դիոն Կասսիոսի.......................................................440
Հայկական նախարարական տների ձևա-
վորումն ըստ Մովսես Խորենացու........................................................449
Գառնիի հունարեն արձանագրությունը..................................................459
Ապարանի հունարեն արձանագրությունը..............................................462
Ք. ա. 72-74 թվականների ալանների արշա-
վանքը դեպի Հայաստան ըստ Հովսեպոս Փլավիոսի......................464
Հայաստանի քաղաքային վիճակը II դարում և
III դարի սկզբներին ըստ Դիոն Կասսիոսի.........................................465
Սասանյան հեղաշրջումը Պարսկաստանում և
Հայաստանը ըստ Ագաթանգեղոսի ........................................................473
Հայ-սասանյան հարաբերությունները ըստ
Մովսես Խորենացու ...........................................................................477
«Քարթլիս ցխովրեբան» հայ-սասանյան հարա-
բերությունների մասին (III դարի երկրորդ քառորդ)....................483

Պարսկա-հռոմեական հարաբերությունները III դարի
կեսերին և Հայաստանը ըստ Զոնարասի ....................................488
Հայոց Արտավազդ V թագավորի նամակը
Շապուհ I-ին ըստ Տրեբելլիոս Պոլիոնի ........................................489

## ԲԱԺԻՆ ՎԵՑԵՐՈՐԴ

## ՀԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ

Գողթան երգերը Մովսես Խորենացու հաղորդմամբ ..........................491
Խորենացին Արտաշես I-ի ժամանակ արհեստ-
ների և գիտության զարգացման մասին ..........................................496
Ստրաբոնը Անահիտ դիցուհու պաշտամունքի մասին...........................497
Անահիտ դիցուհու պաշտամունքը Հայաստա-
նում ըստ Պլինիոս Ավագի...................................................................499
Ագաթանգեղոսը Անահիտի պաշտամունքի մասին..............................499
Մովսես Խորենացին հայկական դիցարանի հել-
լենականացման մասին.........................................................................501
Քաղաքաշինությունը Հայաստանում Երվանդ Վեր-
ջինի օրոք ըստ Մովսես Խորենացու .....................................................504
Մովսես Խորենացին պատմագիր Ողյումպ
քուրմի մասին .......................................................................................507
Մովսես Խորենացին բանաստեղծ Վրույրի մասին ..............................507
Փիլարտոսը հայկական գրերով մանյակի մասին ................................508
Մովսես Խորենացին Անիի հայկական հեթա-
նոսական արխիվի մասին ....................................................................509
Հիպպոլիտոս պատմիչը հայերի դպրություն
ունենալու մասին ..................................................................................510
Ագաթանգեղոսը Հայաստանում գիտության և
ուսման մեհյանի առկայության մասին..................................................511
Գևորգ Ասորի եպիսկոպոսը հայոց գրերի մասին ..............................511
ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ..........................513
ՑԱՆԿԵՐ ....................................................................................... 517

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)
Հ 241

*Կազմողներ՝* ***Պ. Հ. Հովհաննիսյան***
***Ա. Ե. Մովսիսյան***

*Հ 241 Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, հատ. 2: III դարի վերջերից մինչև IX դարի կեսերը: /Կազմողներ՝* ***Պ. Հ. Հովհաննիսյան, Ա. Ե. Մովսիսյան****. - Եր.: ԵՊՀ հրատ., 2011. - 696 էջ:*

*Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիայի սույն երկրորդ հատորն ընդգրկում է հին հայ և օտար պատմիչների երկասիրություններում և այլաբնույթ գրական հուշարձաններում տեղ գտած վաղ միջնադարյան Հայաստանի (IV-IX դարեր) քաղաքական, տնտեսական ու մշակութային պատմությանը վերաբերող կարևորագույն վկայությունները:*

*Հասցեագրվում է ուսանողներին, գիտական ու ընթերցող հանրությանը:*

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)

*ISBN 978-5-8084-1535-5*
*© Հովհաննիսյան Պ. Հ., Մովսիսյան Ա. Ե., 2011*
*© ԵՊՀ հրատարակչություն, 2011*



FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

***Զավեն Եկավյան, Պետրոս Հովհաննիսյան***
***Արշակ Մաղոյան, Պերճ Ստեփանյան***



**Մեսրոպ Մաշտոց և Սահակ Պարթև**
**(ձեռագիր Հայսմավուրք, 1651 թ.)**

## ԿԱԶՄՈՂՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիայի» երկրորդ հատորում զետեղված նյութերը վերաբերում են Ք. հ. III դարի վերջերից մինչև IX դարի կեսերը Հայաստանում ծավալված իրադարձություններին: Հայ և օտար աղբյուրներից բերված վկայությունները դասակարգված են ըստ ժամանակագրության և թեմատիկայի: Նախ տրված են Արշակունիների հայկական թագավորության (298 թվականից մինչև 428 թվականը), ապա մարզպանական ու տանուտիրական (428 թ. մինչև VII դ. կեսերը) և արաբական տիրապետության (VII դ. կեսերից մինչև IX դ. կեսերը) պատմաշրջաններին վերաբերող սկզբնաղբյուրներից քաղված նյութերը:

IV-IX դարերը լի են ճակատագրական նշանակություն ունեցող իրադարձություններով:

IV դարում հայ ականավոր պետական գործիչների (Տիրան, Արշակ II, Պապ) ջանքերը թագավորական ուժեղ, կենտրոնացված իշխանություն հաստատելու ուղղությամբ ձախողվեցին, իսկ V դ. սկզբներին՝ 428 թ. Արշակունիների թագավորությունը կործանվեց: Այս **առաջին բաժնում** նաև զգալի տեղ է հատկացված Հայաստանում քրիստոնեության տարածման ու պետական կրոն հռչակելու իրողությանը:

**Երկրորդ բաժնում** ներկայացվում են օտար տիրապետությունների դեմ բարձրացված հայ ազատամարտի, քրիստոնեության ու ազգային դավանանքի անաղարտության համար մղված պայքարի հանգամանքները:

VII դարի կեսերից սկսվում են արաբների ավերիչ արշավանքները, իսկ հաջորդ դարի սկզբներին Հայաստանում հաստատվում է նրանց դաժան տիրապետությունը: **Երրորդ բաժնի** նյութերը վերաբերում են հենց այս իրողություններին: Հայ և արաբ հեղինակների երկասիրություններից քաղված համապատասխան վկայություններով վեր են հանված հայ ժողովրդի ազատագրական պայքարի բոլոր նշանավոր

դրվագները (703, 748-750, 762, 774-775, 850-855)։

**Չորրորդ բաժնում** տրվում են IV-IX դարերում Հայաստանում ծավալված աղանդավորական շարժումներին (անապատականներ, մծղնեականներ, բորբորիտներ, արիոսականներ և պավլիկյաններ) վերաբերող նյութերը։

Քրեստոմատիայի վերջին՝ **հինգերորդ բաժինը** նվիրված է հայ մշակույթի զարգացման արտահայտություններին։ Իրերի բերումով V-VIII դարերում Հայաստանը դարձել էր համաշխարհային մշակութային կյանքի կենտրոն։ Բերված նյութերը փաստում են հայերի նշանակալից նպաստը համընդհանուր մշակույթի ծիրից ներս։ Առանձին ներկայացված են Մեսրոպ Մաշտոցի, Եզնիկ Կողբացու, Մովսես Խորենացու, Դավիթ Անհաղթի, Անանիա Շիրակացու, Հովհան Օձնեցու և այլոց մշակութային ձեռնարկները, ինչպես նաև գեղարվեստական գրականությանը, ճարտարապետությանը, թատրոնին և այլ բնագավառներին վերաբերող նյութերը։

Քրեստոմատիայում ընդգրկված սկզբնաղբյուրային բնագրերին կցված են սեղմ ներածականներ, որտեղ հեղինակների մասին տրվում են ընդհանուր բնույթի տեղեկություններ։ Եթե հեղինակներից որևէ մեկի վերաբերյալ տեղեկություններն արդեն տրված են առաջին հատորում, ապա այստեղ նման տեղեկություններ չեն տրվում։ Հայկական սկզբնաղբյուրները բերվում են աշխարհաբար թարգմանություններով, եթե դրանք բացակայում են, ապա տրվում են հատուկ քրեստոմատիայի համար կատարված թարգմանություններ։

Լայնորեն օգտագործվել են «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարով լույս տեսած հրատարակությունները։ Իսկ օտարալեզու որոշ նյութեր հայերենով ընդհանրապես լույս են տեսնում առաջին անգամ։ Քրեստոմատիայում բերված նյութերում հանդիպող վիճելի, անհասկանալի և բացատրության կարոտ տեղերը ծանոթագրվում են բնագրից անմիջապես հետո։ Հատորի վերջում զետեղված են անձնանունների և տեղանունների ցանկեր։ Առանձին տրվում են Արշակունի թագավորների, հայ մարզպանների, հայոց իշխանների և հայոց կաթողիկոսների ժամանակագրությունը։

Հատորի առաջին բաժինը կազմել, ծանոթագրել և հրատարակության է պատրաստել **Ա. Ե. Մովսիսյանը,** երկրորդ-հինգերորդ բաժինները՝ **Պ. Հ. Հովհաննիսյանը։**

Քրեստոմատիան, ինչպես արդեն շեշտվել է առաջին հատորում, նպատակ չունի և, բնականաբար, չի էլ կարող ընդգրկել այն ամենը, ինչ պարունակում է վաղ միջնադարյան պատմագիտական ու աշ-

խարհագրական միտքը հայերի և Հայաստանի մասին։ Կազմողները հիանալի գիտակցում են, որ տարասեռ սկզբնաղբյուրից հատվածաբար քաղված ու մի բերված նյութերի նման մի ժողովածու ոչ միայն չի կարող ակնկալել կատարյալ միօրինակություն, այլև զերծ լինել առանձին բացթողումներից ու թերություններից։ Հետևաբար կազմողները սիրահոժար կընդունեն ընթերցողների դիտողություններն ու ցանկությունները, որոնք հաշվի կառնվեն քրեստոմատիայի հաջորդ հատորները հրատարակության պատրաստելիս։





*Մովսես Խորենացի*
*(գործ՝ Այճեմնիկ Ուրարտուի)*



### ԲԱԺԻՆ ԱՌԱՋԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՎԱՂ ԱՎԱՏԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

## ՄԵԾ ՀԱՅՔԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ. ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՏՆԵՐՆ ՈՒ ՌԱԶՄԱԿԱՆ ՈՒԺԵՐԸ

### ՄԵԾ ՀԱՅՔԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐՆ ԸՍՏ ԿԼԱՎԴԻՈՍ ՊՏՂՈՄԵՈՍԻ

***Նշանավոր հույն աստղագետ, ֆիզիկոս, մաթեմատիկոս Կլավդիոս Պտղոմեոսը (83–168) հեղինակ է նաև ութ գրքերից բաղկացած «Աշխարհագրություն» վերտառությամբ մի հիանալի աշխատության: Այստեղ հեղինակը ներկայացրել է Իռլանդիայից մինչև Եգիպտոս (աշխարհագրական լայնության) և Ատլանտյան օվկիանոսից մինչև Հնդկաչին (աշխարհագրական երկարության) գտնվող երկրների կոորդինատները՝ աստիճաններով ու րոպեներով: «Աշխարհագրության» 5-րդ գիրքը բովանդակում է Մեծ Հայքի, Իբերիայի, Աղվանքի և Կողքիսի մանրամասն նկարագրությունը: Չնայած նկատվող անճշտություններին ու վրիպումներին՝ այս երկը պատմա-աշխարհագրական արժեքավոր սկզբնաղբյուր է շատ երկրների, այդ թվում և Մեծ Հայքի վերաբերյալ: Այստեղ կոորդինատներով տրվում են Մեծ Հայքի լեռներն ու լեռնաշղթաները, լճերն ու գետերը, նահանգներն (20 անուն) ու բնակավայրերը (84 անուն): Թեև Պտղոմեոսի նկարագրած Մեծ Հայքի սահմանների և վարչական բաժանումների վերաբերյալ տվյալներն արտացոլում են Ք. հ. II դ. երկրորդ կեսի տարածքային վիճակը, սակայն դա, ըստ էության, հիմնականում անփոփոխ է մնացել նաև III դարում: Հանգամանք, որով էլ բացատրվում է Պտղոմեոսի «Աշխարհագրությունից» ստորև բերված հատվածի առկայությունը քրեստոմատիայի սույն հատորում:***

***Պտղոմեոսից բերված հատվածը տրվում է ըստ «Claudii Ptolemaei Geographia, ed. Coralus Fridericus, Augustus Nobbe, Lipsiae, 1843-1845» հրատարակության, Գ. Ս. Մուրադյանի թարգմանությամբ:***

ԿԼԱՎԴԻՈՍ ՊՏՂՈՄԵՈՍ

ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ, ՀԱՏՈՐ 2-ՐԴ

**Գիրք 5-րդ**

**Գլուխ 13. ՄԵԾ ՀԱՅՔԻ ԴԻՐՔԸ**

**[Ասիայի III քարտեզ]**

*§ 1. Մեծ Հայքը հյուսիսից սահմանակից է Կողքիսի[1] մի մասին, Իբերիային, Աղվանքին՝ Կյուրոս գետով[2] անցնող հիշատակված գծով:*

*§ 2. Արևմուտքից սահմանակից է Կապադովկիային, Եփրատ գետի մի մասի գծած գծով և Կապադովկիական Պոնտոսի այն մասով, որ հասնում է մինչև Կողքիս՝ Մոսխական լեռների[3] գծած գծով:*

*§ 3. Արևելքից՝ Հիրկանյան ծովի[4] այն մասին, որը Կյուրոս գետի գետաբերանից հասնում է մինչև 79° 45′ 43° 20′ չափումներն ունեցող սահմանը, [որի և Կյուրոս գետի գետաբերանի միջև գտնվում է նաև*



**Փոքր Մասիս**
***(լուսանկարված Մեծ Մասիսից)***

*Արաքս գետի գետաբերանը՝ 79° 45′ 43° 50′] և Մարաստանին՝ այստեղից դեպի Կասպիոս լեռը[5] ձգվող գծով, որի ծայրերն ունեն 79° 42′ 30′ և 80° 39° 30′ չափումները:*

*§ 4. Հարավից Մեծ Հայքը [սահմանակից է] Միջագետքին՝ Տավրոսի գծած գծով, որը հասնում է Եփրատ գետին այն տեղում, որի չափումներն են 71° 30′ 39°, և Տիգրիս գետին՝ 75° 30′ 38° 30′ չափումներն ունեցող վայրում, և Ասորեստանին՝ Նիփատես լեռան վրայով անցնող գծով, համարյա ուղիղ մինչև Կասպիոս լեռան նշված սահմանը, այն գծով, որ ձգվում է Նիփատես լեռը:*

*§ 5. Հայքի նշանավոր լեռներն են. Մոսխական կոչեցյալները, որոնք ձգվում են Կապադովկիական Պոնտոսից վերև ընկած հատվածի երկայնքով մինչև Պարյուադրեսը[6], որի ծայրերն ունեն 75° 43° 20′ և 77° 42° չափումները, Ուդակեսպես լեռը[7], որի մեջտեղի մասն ունի 80° 30′ 40° չափումները և Անտիտավրոսի՝ Եփրատից ներս ընկած մասը, որի մեջտեղի մասն ունի 72° 41° 40′ չափումները, այսպես կոչված Աբոս լեռը[8], որի կենտրոնական մասն ունի 77° 41° 10′ չափումները, և Գորդյուական լեռները[9], որոնց կենտրոնական մասն ունի 75° 39° 10′ չափումները:*

*§ 6. Այդ երկրի միջով հոսում են հետևյալ գետերը. Արաքսը, որի գետաբերանն ընկած է Հիրկանյան ծովի մոտ և ունի 79° 45′ 43° 50′ չափումները, իսկ ակունքը՝ 76° 30′ 42° 30′ չափումներն ունեցող վայրում, որից չարժվելով դեպի արևելք մինչև Կասպիոս լեռը և թեքվելով դեպի հյուսիս, իր մի թևով թափվում է Հիրկանյան ծովը, իսկ մյուսով խառնվում Կյուրոս գետին՝ 78° 30′ 44° 30′ չափումներն ունեցող վայրում: Նաև Եփրատ գետի՝ նշված վայրից[10] դեպի արևելք թեքվող հատվածը, մինչև ակունքը, որն ունի 75° 40′ 42° 40′ չափումները:*

*§ 7. Եփրատ գետն ունի և հիշատակության արժանի մի այլ վտակ[11]. դրանցից մեկը և Եփրատ գետի միախառնման վայրն ունեն 71° 30′ 40° 30′ չափումները, իսկ գետի ակունքը՝ 77° 41′: [Մեծ Հայքի տարածքով է անցնում նաև] Տիգրիս գետի Հայքի մեջ մտնող հատվածը՝ նրա հարավային ափի հատումից մինչև հենց իր՝ Տիգրիսի ակունքը, որն ունի 74° 40′ 39° 40′ չափումները և գոյացնում է Թոսպիտիս կոչված լիճը[12]:*

*§ 8. Կան և ուրիշ լճեր՝ Լյուքհնիտիս կոչվածը[13], որի կենտրոնն ունի 78° 43° 15′ չափումները, և Արսեսալիմ[14], որի կենտրոնն ունի 78° 30′ 40° 45′ չափումները:*

*§ 9. Մեծ Հայքի՝ Եփրատ, Կյուրոս և Արաքս գետերի միջև ընկած*

*հատվածի գավառներն են. Մոսխական լեռների մոտ՝ Կատարզենե[15], Բոքեր կոչեցյալներից վերև, Կյուրոս գետի մոտ՝ Օբարենե[16] և Օտենե[17], Արաքս գետի մոտ՝ Կոլթենե[18], իսկ նրանից ներքև Սոդուկենե[19], Պարյուադրես լեռան մոտ՝ Սիրակենե[20] և Սակսենե[21]:*

*§ 13. Նշվածից ներքև մինչև Եփրատի վտակը [Հայքի] ամենահյուսիսային գավառներն են, սկսած արևմուտքից՝ Բասիլիսենե[22], Բոլբենե[23], Արսեսա[24], դրանից ներքև՝ Ակիլիսենե[25], Աստավնիտիս[26] և հենց գետի կորության մոտ՝ Սոփենե[27]:*

*§ 18. Մնացած՝ հարավային մասում, Եփրատի և Տիգրիսի ակունքների միջև [Հայքի գավառներն են]՝ Անզիտենե, նրանից ներքև՝ Թոսպիտիս[29], հետո Կորիայա[30]:*

*§ 20. Տիգրիս գետի ակունքից արևելք [Հայքի գավառներն են]՝ Բագրանդավենե (կամ Կագրանդավենե)[31], նրանից ներքև Գորդյուենե (կամ Գորդյունե)[32], որից արևելք՝ Կոտայա[33], և նրանից ներքև՝ մարդերը[34]:*

*Հայաստանի քաղաքներն են ... [35]՝ Էլեգիա[36], Արմավիրա[32], Արտաքսատա[38], Նաքսուանա[39], Անզիտա[40], Արսամոսատա[41], Բուանա[42], Արտեմիտա[43], Տիգրանոկերտա[44], Արտագիգարտա[45], Տիգրանոամա[46], [և այլն]:*

1. **Կողքիս** – խոսքը Եգր (Եգեր) կոչված աշխարհի մասին է՝ Ճորոխ գետի ներքին հոսանքի հովտում:

2. Նկատի ունի Կուր գետը:

3. Լեռներ, որ ձգվում են Եփրատից հյուսիս-արևելք մինչև Կողքիս:

4. Այսինքն՝ Կասպից ծովի:

5. Խոսքը Կասպիական լեռների մասին է, որոնք Մեծ Հայքը բաժանում էին Մարաստանից:

6. Խոսքը Պոնտական (Պարխարյան) լեռների մասին է:

7. **Ուդակեսպես** – այժմյան Քոչաթաղի լեռներն են:

8. Աբոսը Սրմանց (Բյուրակն, այժմ՝ Բինգյոլ) լեռներն են:

9. **Գորդյուական լեռներ** – խոսքը Կորդվաց լեռների մասին է:

10. **Նշված վայրից** – նկատի ունի իր բնագրի (հատ. 2, գիրք 5, գլ. 6, § 1) հետևյալ հատվածը՝ «Կապադովկիան արևելքից սահմանակից է Մեծ Հայքին Եփրատ գետով՝ Ամանոս լեռան նշված հատվածից մինչև նրա դեպի արևելք թեքված հատվածի ամենահյուսիսային մասը, դրանից հետո՝ Մոսխական լեռների վրայով անցնող գծի երկայնքով մինչև 72° 30′ 44° 50′ չափումներն ունեցող սահմանը»:

11. Հավանաբար ակնարկը վերաբերում է Արսանիաս (Արածանի) գետին:

*12. Պտղոմեոսի Թոսպիտիսը Վանա լիճն է: Անշուշտ, նա սխալվում է, երբ գրում է, թե լիճը գոյացել է Տիգրիսի ջրերից:*

*13. **Լյուքհնիտիս** – Գեղաքունյաց (Սևանա) լիճն է:*

*14. **Արսեսալիմ** – Ուրմիա (Կապուտան) լիճն է:*

*15. **Կատարզենե** – հայկական Կղարջք գավառն է:*

*16. **Օբարենե** – նահանգ, որ Պտղոմեոսի ժամանակներում սահմանակից է եղել արևմուտքում՝ Կղարջքին, հյուսիսում՝ Իբերիային և արևելքում Ուտիքին:*

*17. **Օտենե** – համապատասխանում է Ուտիք նահանգին:*

*18. **Կոլթենե** – գավառ Ուտիքում:*

*19. **Սոդուկենե** – համապատասխանում է Սոդք (Սոթք) գավառին:*

*20. **Սիրակենե** – համապատասխանում է Շիրակ գավառին:*

*21. **Սակասենե** – խոսքը Շակաշեն (Սակաշեն) նահանգի մասին է:*

*22. **Բասիլիսենե** – հավանաբար Բասեն գավառն է:*

*23. **Բոլբենե** – նահանգ, որ Պտղոմեոսի ժամանակներում սահմանակից է եղել արևմուտքում՝ Եկեղյաց, հյուսիսում՝ Բոքաս, հարավում՝ Աղձնիք նահանգներին:*

*24. **Արսեսա** – նահանգ, որ ընդգրկել է Արածանիի ավազանի տարածքը:*

*25. **Ակիլիսենե** – Եկեղյաց (Անահտական) գավառն է:*

*26. **Աստավնիտիս** – հավանաբար Ստրաբոնի Փավնենեն է, հայկական սկզբնաղբյուրների Փավնիտիսը:*

*27. Հայկական Ծոփք նահանգն է:*

*28. Հայկական Անձիտ գավառն է:*

*29. **Թոսպիտիս** – Վասպուրականի Տոսպ գավառն է:*

*30. **Կորիայա** – նույնացվում էր Կորճայք գավառին:*

*31. **Բագրանդավենե (Կագրանդավենե)** – նույնացվում է Բագրևանդ գավառին:*

*32. Նույնացվում է Կորդուք նահանգին:*

*33. Ենթադրվել է, որ Կոտայք գավառն է, սակայն Կորդուքից արևելք գտնվելը ցույց է տալիս, որ այն սեպագիր աղբյուրների Կուտի երկիրն է:*

*34. **Մարդեր** – հավանաբար նկատի ունի Մարդաստան գավառը՝ Մակուից դեպի արևմուտք:*

*35. Թվարկված 84 բնակավայրերից ներկայացնում ենք մի քանիսը:*

*36. Բնակավայր Կարինից Արևմուտք, միջնադարյան հայ հեղինակների Եղեգիսն է, այժմ՝ Իլիջան:*

*37. Արմավիր քաղաքն է:*

*38. Արտաշատ քաղաքն է:*

*39. **Նաքսուանա** – Նախճավան քաղաքն է:*

*40. Ամրոց, քաղաք Խարբերդից հարավ-արևելք, այժմ՝ Թիլ-էնզիտ գյուղը:*

*41. Արշամաշատ քաղաքն է:*

*42. Վան քաղաքն է:*

*43. Քաղաք Վանա լճի հարավարևելյան ափին: Միջնադարյան հայկական սկզբնաղբյուրներում՝ Արտամետ:*

*44. Տիգրանակերտ մայրաքաղաքն է:*

*45. Քաղաք, ամրոց Արշակունիք գավառում: Միջնադարյան հայկական սկզբնաղբյուրներում՝ Արտագերս:*

*46. **Տիգրանուամա** – նույնացվում է Գողթնի Տիգրանավանի հետ:*

## ՄԵԾ ՀԱՅՔԻ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ «ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ»-Ի

***«Աշխարհացոյց» երկասիրությունը վաղ միջնադարի հայ մտավոր-մշակութային կյանքի անզուգական արժեքներից է: Իր նշանակությամբ այն դուրս է եկել ազգային-մտավոր շրջանից և դարձել միջազգային հնչեղություն ունեցող գրական հուշարձան:***

***Չնայած դրան, ցայսօր այդ եզակի հուշարձանի հեղինակային պատկանելիության հարցը շարունակում է մնալ առկախ: Ուսումնասիրողների մի մեծ խումբ այն վերագրում է Մովսես Խորենացուն, մյուսները՝ նրա հեղինակ են համարում Անանիա Շիրակացուն: Ի շահ այս կամ այն տեսակետի պաշտպանության, հանդես են եկել մեծ թվով նշանավոր հայագետներ, գրվել են բազմաթիվ ու բազմալեզու ուսումնասիրություններ: Վերջին շրջանում լույս տեսած ուսումնասիրություններն ավելի ու ավելի են հիմնավորում Մովսես Խորենացու հեղինակային իրավունքները: Անշուշտ, այն համելմամբ, որ V դարի գրական հուշարձանը Մովսես Խորենացուց հետո շարունակել է հարստանալ և համալրվել այլևայլ նյութերով, մասնավորապես հավանական է համարվել «Աշխարհացոյց»-ի հետագա հարստացումը նաև VII դարիականավոր գիտնական Անանիա Շիրակացու կողմից:***

***«Աշխարհացոյց»-ի հեղինակը լայնորեն է օգտվել հույն աշխարհագետներ Կլավդիոս Պտղոմեոսի (II դար), Պապոս Ալեքսանդրացու և Ագաթոդեմոնի (III դար) աշխարհագրություններից, սակայն դրանք հարստացրել և ճշգրտել է նորանոր ու բազմաբնույթ նյութերով: «Աշխարհացոյց»-ի հեղինակը նկարագրել է Եվրոպա, Լիբիա (Աֆրիկա) և Ասիա մայրցամաքների իրեն հայտնի երկրները, տվել դրանց ֆիզիկա-աշխարհագրական նկարագիրը: Հատկապես խիստ արժեքավոր են «Աշխարհացոյց»-ի այն բաժինները, որոնք նվիրված են Մեծ Հայքի, Փոքր Հայքի, Վիրքի, Աղվանքի, Կողքիսի, Հյուսիսային Կովկասի, Պարսկաստանի, Ասորիքի և Միջագետքի նկարագրությանը:***

***«Աշխարհացոյց»-ից ստորև բերված հատվածը տալիս ենք Ս. Տ. Երեմյանի թարգմանությամբ (տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանն ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963)։***

## *ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ*

### ՄԵԾ ՀԱՅՔԻ ՄԱՍԻՆ, *էջ* 105-112

*Մեծ Հայք երկիրը սկսվում է Կապադովկիական [Պոնտոսից] ու Փոքր Հայքից արևելք, Եփրատ գետով մինչև Տավրոս լեռները, որ բաժանում է Մեծ Հայքը Միջագետքից։ Հարավային կողմից [Մեծ Հայքը] սահմանակից է Ասորեստանին, ապա սահմանը ուղղվում է դեպի [արևելք]՝ Ատրպատական և Մարաց աշխարհը, մինչև Երասխի թափվելը Կասպից ծով։ Իսկ հյուսիսային կողմից (Մեծ Հայքը) սահմանակից է Աղվանքին և Վիրքին և Եգեր աշխարհին[1], մինչև Եփրատ գետի դառնալը դեպի հարավ։*

*Մեծ Հայքն ունի հայտնի լեռներ և մեծ ու փոքր գետեր և վեց ծովակ[2]։*

*Մեծ Հայքն ունի տասնհինգ փոքր աշխարհներ, որոնք են.*

*Առաջին աշխարհ՝ Բարձր Հայք, այսինքն՝ Կարնո երկիրը, երկրորդ աշխարհ՝ Չորրորդ Հայք, այսինքն՝ Ծոփքի երկիրը, երրորդ աշխարհ՝ Աղձնիք, Տիգրիս գետի վրա, չորրորդ աշխարհ՝ Տավրուբերանը կամ Տարոնո երկիրը, հինգերորդ աշխարհ՝ Մոկք, վեցերորդ աշխարհ՝ Կորճայք, որ սահմանակից է Ասորեստանին, յոթերորդ աշխարհ՝ Պարսկահայք, որ սահմանակից է Ատրպատականին, ութերորդ աշխարհ՝ Վասպուրական, որ նրանից (Պարսկահայքից) հյուսիս-արևմուտք է (գտնվում), իններորդ աշխարհ՝ Սյունիք, որ սահմանակից է Երասխին, տասներորդ աշխարհ՝ Արցախ, որ նրան (Սյունիքին) մոտ է գտնվում, տասնմեկերորդ աշխարհ՝ Փայտակարան (համանուն) քաղաքով, գտնվում է Կասպից ծովի եզերքին, Երասխի գետաբերանին։ Տասներկուերորդը Ուտիացվոց աշխարհն է, որ սահմանակից է Աղվանքին Կուր գետով։ Տասներեքերորդ աշխարհն է Գուգարքը, որ սահմանակից է Վիրքին։ Տասնչորսերորդ աշխարհն է Տայքը, որ սահմանակից է Եգր աշխարհին։ Տասնհինգերորդ աշխարհն է Այրարատը, նրանց միջև։ Այժմ ուզում եմ այս աշխարհների մասին մանրամասնաբար պատմել, թեև մի քիչ պիտի աշխատեմ գրքերի և քարտեզների վրա։*

*Առաջին աշխարհ Բարձր Հայքն ունի ինը գավառ. Դարանաղի, Աղիվն, Մրզուր, Եկեղյաց, Մանանաղի, Դերջան, Սպեր, Շաղագոմ,*



***Մռավի լեռնաշղթան***

*Կարին: Հիրավի, ինչպես ցույց է տալիս անունը, Բարձր Հայքը արդարև բարձր է, ոչ միայն Հայաստանի [մնացյալ] մասերից, այլև ամբողջ երկրից, որի համար էլ այս աշխարհը կոչեցին Կատար Երկ-րի: Աշխարհի չորս կողմերը ջուր է արձակում և այնտեղից բխում են չորս հզոր գետեր. Եփրատը՝ դեպի արևմուտք և Երասխը՝ դեպի արևելք, Գայլը՝ դեպի հարավ և Ակամսիս կամ Վոհ գետը՝ դեպի հյուս-սիս: Ունի երեք մեծ լեռնագագաթ, ունի որսի կենդանիներ՝ եղջերու, այծ և քաղ, առն ու արտիկ[3], վիթ և կրկիթ[4] և խոզ (վայրի), իսկ թռչուններից՝ ճարակավորներին[5], որոնցից են կաքավ, արոս, անիդ և այլք: (Բարձր Հայքը) ունի ջերմուկներ և աղահանքեր և երկրի բոլոր բարիքները ու Թեոդ(ոս)ուպոլիս քաղաքը:*

*(Մեծ) Հայքի երկրորդ աշխարհն է Չորրորդ Հայքը կամ Ծոփաց աշխարհը: Հյուսիսից սահմանակից է Բարձր Հայքին, արևմուտքից սահմանակից է Մելիտինե քաղաքին, հարավից՝ Միջագետքին, իսկ արևելքից՝ Տարոնին: (Չորրորդ Հայքը) ունի ութ գավառ. հյուսիս-արևելքից՝ Խորձյան, որի միջով, Կողոբերդի մոտով, հոսում է Մյուս Գայլ գետը, Հաշտյանք, որտեղից բխում են Տիգրիս գետի ակունքի աղբյուրները: Խորձյանից դեպի արևմուտք գտնվում է Պաղնատուն գավառը համանուն բերդով, իսկ նրա դիմաց, դեպի հարավ (գտնվում է)՝ Բալահովիտ գավառը: Նրանցից (այսինքն՝ Պաղնատուն և Բալահովիտ գավառներից) արևմուտք (գտնվում է)՝ Ծոփք*

*(գավառը) և դրանցից հարավ՝ Անձիտ գավառը, որտեղ (գտնվում են) Ծովք (լիճը) և Հոռե բերդը: Եվ դրանցից (այսինքն՝ Ծոփք և Անձիտ գավառներից) արևմուտք, (գտնվում է)՝ Դեգիք գավառը՝ Կոնի, Քրվիկ և Սոկ բերդերով, որոնց դիմաց հարավում (գտնվում է) Գավրեք գավառը, որոնց միջև հոսող Արածանին խառնվում է Եփրատ գետը Լուսաթառիճ քաղաքի մոտ և, գնալով դեպի արևմուտք, անցնում է Մելիտինեից արևելք գտնվող Փոքր Հայքի սահմաններով: Ապա Եփրատն է թափվում Կիակկաս գետը, որ հոսում է արևմուտքից, Ջիգոն-Բասիլիկոն կոչվող լեռներից: Եվ նախքան նրա (Կիակկաս գետի) թափվելը Եփրատ գետում, նրա մեջ է խառնվում Կառամինոն գետը, որը գալիս է Տավրոս լեռներից, և ընդունելով (այս գետերը), Եփրատը հոսում է դեպի հարավ, ճեղքում է Տավրոսյան լեռները, որտեղ գտնվում են բյուրեղի ակների [հանքերը]: Չորրորդ Հայքն ունի որսի կենդանիներ և թռչուններ, իսկ գազաններից՝ առյուծ[6]:*

*Երրորդ աշխարհն է Աղձնիքը, Միջագետքից արևելք և Դկղատ (գետից) հյուսիս, ունի տասնմեկ գավառ՝ [Անգեղ տուն], Նփռետ (կամ Նփրկերտ), Աղձն, որոնց միջև հոսում է Քաղիրթ գետը, որին արաբները կոչում են Շիթիթմա, որ նշանակում է «արյունարբու», որից հետո՝ Քաղ գավառն է: Իսկ լեռներում (Աղձնիքն) ունի՝ Կեթիկ, Տատիկ, Ագնվաձոր, Երխեթք, Գզեղխ, Սալնաձոր և Սանասուն գավառները: (Աղձնիքը) ունի նավթ և երկաթ ընտիր, և գլթոր, իսկ թռչուններից՝ դեղհուկ[7]:*

*Չորրորդ աշխարհն է Տավրուբերանը [կամ Տարոնը աշխարհը], գտնվում է Չորրորդ Հայքից դեպի արևելք և ունի տասնվեց գավառ. Խոյթ, Ասպակունյաց ձոր (կամ Ասպականունյաց ձոր), Տարոն որով հոսում է Մեղ գետը և թափվում է Եփրատ: Սրանից հյուսիս (գտնվում է)՝ Արշամունիք (գավառը) Սրմանց լեռնագագաթով, որը կոչվում է Կատար Երկրի, և որից բխում են բազմաթիվ աղբյուրներ: Սրանցից հյուսիս (գտնվում է)՝ Մարդաղի (գավառը) Մեղեդուղխ լեռների ուղղությամբ, մինչև Այծապտկունք լեռնագագաթը, որը բաժանում է Կարին (գավառը) դրանից (Մարդաղի գավառից): (Մեղեդուղխ լեռներում) գտնվում են սալակ[8] և ձիղկ[9], և նավթ սպիտակ ու սև: (Այծպտկունք լեռնագագաթից) արևելք բխում է Մուրց գետը, որը հոսելով դեպի հյուսիս, իջնում է Բասեն գավառը և թափվում է Երասխ, գետանցելով վերջինս:*

*Մարդաղիից արևելք (գտնվում) է Դասնավորք գավառը, դրանից արևելք՝ Տվարածատափ (գավառը) և դրանից արևելք՝ Դալառ (գա-*

*վառը)։ Իսկ դրանցից (հիշյալ գավառներից) հարավ (գտնվում են)՝ Հարք և Վարաժնունիք գավառները, մինչև Արածանի (գետը), որն իջնում է Ապահունիք գավառից։ Սրանից հարավ է Բզնունյաց գավառը, որն սկսվելով Սարակն և Նեխ-Մասիք (լեռնագագաթներից), պատում է հոմանուն (Բզնունյաց) ծովի արևմտյան եզերքը, և տարածվում է մինչև Բաղ[աղ]եշ բերդը և այնտեղից մինչև հարավակողմում գտնվող Երեվարք գավառի սահմանները։ Բզնունիք գավառն իր հոմանուն ծովում ունի երեք կղզի՝ Արծկե, Ծիպան և Տոքյան[10], որից հարավ, Տավրոս լեռների և ծովի միջև, գտնվում է Երեվարք (գավառը), որտեղ գտնվում է մի լիճ, որ կոչվում է Եղեգի, գոյացած ուղխից[11], և վարելու ժամանակ եզը ջուր է խմում ակոսից, և ցանածը հասունանում է քառասուն օրվա ընթացքում և տալիս է բերք մեկին հիսուն։*

*Բզնունյաց ծովի երկայնությունն է հարյուր մղոն, իսկ լայնությունը՝ վաթսուն։ Բզնունյաց ծովից հյուսիս (գտնվում է) Աղիովիտ գավառը, և նրանից արևմուտք՝ Ապահունիք (գավառը), որի միջով անցնում է Արածանի գետը [և նրանից հարավ գտնվում է Կորի գավառը]։ Բզնունյանց (ծովի) ափին է (գտնվում) [Խոռխոռունիք գավառը]։*

*(Տավրուբերանում) գտնվում է պստակ և չագանակ։ Ունի և գազպե և անուշ մեղր, քաղցր, քան ամբողջ աշխարհքում, նավթ և երկաթ...։*

*Հինգերորդ աշխարհն է Մոկքը, Աղձնիքից արևելք Տավրոս լեռներում։ Ունի ութ գավառ. Իշայր, Մեփս (Մյուս) Իշայր, Իշոց գավառ, Առուենից ձոր, Միջա, Մոկք Առանձնակ կամ Արքայից գավառ, որտեղ հոսում է Որբ գետը, Արգաստովիտ գավառ, Ջերմաձոր, որտեղով հոսում է Ջերմ գետը։ Մրգերից ունի գահրչակ[12] և մանրագոր[13], իսկ գազաններից՝ ինձ գեղեցկախայտ, և թռչուններից՝ կաքավ։*

*Վեցերորդ աշխարհն է Կորճայքը, որ գտնվում է Մոկքից արևելք և սահմանակից Ասորեստանին։ Ունի տասնմեկ գավառ, Կորդուք, որտեղ գտնվում է Թմանը՝ Ասորեստանի սահմանների մոտ, Կորդրիք Վերին, Կորդրիք Միջին, Կորդրիք Ներքին, Այտուանք, Այգառք, Մոթողանք, Որսիրանք, Կարթունիք, Ճահուկ, Փոքր Աղբակ։ (Կորճայքը) ունի զաուիկ[14] և պտուղներից՝ չահղանակ, այսինքն՝ գանգար փշի սերմը[15]։*

*Յոթերորդ [աշխարհն] է Պարսկահայքը, Կորճայքից արևելք, և սեպաձև մտնում է Ատրպատականի մեջ ու Տավրոս լեռների այն կողմերը, որոնք կոչվում են Կոհ-ի-Նիհորական, մինչև Արասխ գետը։ (Պարսկահայքը) ունի ինը գավառ, Այլի, որը նաև Կուռիճան է կոչվում, Մարի-գավառ, Թրաբի-գավառ, Արասխ կամ Ովեա, Առնա,*

*Տամբեր, Զարեհավան, Զարավանդ և Հեր: Որսի կենդանիներից ունի ցիռ[16] և այծյամ:*

*Ութերորդ (աշխարհն) է Վասպուրականը, Պարսկահայքից արևմուտք և սահմանակից Կորճայքին: Ունի երեսունհինգ գավառ և սրանք են. Ռշտունիք, որ գտնվում է Մոկքի և Բզնունյաց ծովի միջև, որի մեջ ունի երկու կղզի, Աղթամար և Արտի, և Մանակարտ ցամաքակղզին: Տոսպ (գավառ)՝ Բյնունյաց ծովից արևելք, ապա՝ Բոգունիք, Արճիշակովիտ, Կուղանովիտ (գավառները): [Բզնունյաց ծովից հյուսիս են գտնվում]՝ Աղիովիտ և Գառնի (գավառները) մինչև Կոգովիտ գավառը, որը գտնվում է Ազատ Մասիս (լեռնագագաթի) ստորոտին: Առբերանի (գավառը) Բզնունյաց ծովից արևելք է, որտեղ գտնվում են՝ Զքատան և Լիմ կղզիները, Ամյուկ ցամաքակղզին և Առեստ ավանը, որտեղից դուրս է գալիս [տառեխ] ձուկը:*

*(Վերոհիշյալ գավառներից) արևելք են գտնվում՝ Բուժունիք, Առնոտն, Անձևացիք, Տրպատունիք, Երվանդունիք, [Բուն Մարդաստան], Մարդաստան և Արտազ (գավառները) մինչև Կոգովիտ (գավառը): Սրանցից դեպի արևելք են գտնվում՝ Ակե, Աղբակ Մեծը, Անձախի ձորը, Թոռնավանը և Ճուաշ-ռոտ (գավառը) մինչև Երասխ (գետը): [Ապա]՝ Կրրճունիք, Մեծնունիք, Պալունիք, Գուկան, Աղանդ-ռոտ, Պարսպատունիք, Արտաշիսյան կամ Արտավանյան, Բա[ք]րան կամ Մարանդ, Գաբիթյան, Գազրիկյան, Տայգրյան, Վարաժնունիք, գինեվետ Գողթնը և Նախճավան գավառը, որտեղ գտնվում է համանուն քաղաքը:*

*Իններորդ աշխարհն է Սյունիքը, գտնվում է Երասխի և Արցախի միջև և Այրարատից արևելք, ունի տասներկու գավառ. Երնջակ, Ճահուկ, Վայոց ձոր, Գեղարքունի համանուն ծովով, Սոթք, Աղահեճք, Ծղուկ, Հաբանդ, Բաղք, Ձորք, Արևիք, Կովսական համանուն գետերով, մինչև Նակորզան քաղաքը[17] իր գետանցքով, և Աղուան գետը: Սյունիքում կա մուրտ[18] և գերերի[19] և ազնիվ նուռ և ամրացված տեղեր:*

*Տասներորդ [աշխարհն] է Արցախը, սահմանակից Սյունիքին, ունի տասներկու գավառ. Մեփս (Մյուս) Հաբանդ [կամ Սիսական ի Կոտակ, կամ Սիսական ի Ոստան], Վայկունիք, Բերդաձոր, Մեծ Առանք, Մեծ Կվանք, Հարճլանք, Մուխանք, Պիանք, Պարսականք, Քուստի, Փառնես, Կողթ, որտեղ կա քարախունկ[20]: Այս բոլորն ունի Աղվանքը, հանելով Հայաստանից:*

*Տասնմեկերորդ [աշխարհն] է Փայտակարանը, Ուտիքից արևելք, Երասխ գետի վրա: Ունի տասներկու գավառ, որոնք այժմ Ատրպատականի կազմում են. Հրաքոտ-պերոժ, Վարդանակերտ, Յոթնփորակյան բագինք, Ռոտ-ի-Բաղա կամ Բաղան-ռոտ, Առոսպիճան,*

*Հանի, Աթշի-Բագավան, Սպանդարան-պերոժ, Որմիզդպերոժ, Ալե-վան: Այնտեղ կա բամբակ անբավ և գարի ինքնաբույս:*

*Տասներկուերորդ [աշխարհն է] Ուտիքը, Երասխ գետից արև-մուտք, Արցախի և Կուր գետի միջև: Ունի ութ գավառ, որոնք այժմ Աղվանքի կազմում են. Առան-ռոտ, Տռի, Ռոտ-Պարսեան, Աղուե, Տուս-Քուստակ, Գարդման, Շակաշեն, Ուտի Առանձնակ՝ որտեղ Պարտավ քաղաքն է: Կա այնտեղ (Ուտիքում) ձիթենի, փարնկենի[21], Համրիկ[22], իսկ թռչուններից՝ կատակ[23]:*

*Տասներեքերորդ աշխարհն է Գուգարքը, Ուտիքից արևմուտք, ունի ինը գավառ. Ձորափոր, Կողբոփոր, Ծոբոփոր, Տաշիր, Թռեղք, Կանգարք, Ջավախք Վերին, Արտահան, Կղարջք: Կա այնտեղ անա-լութ[24], հաճարածառ, սերկևիլ և տոսախ[25]: Այժմ Վիրքի կազմում է, վերցված՝ Հայաստանից:*

*Տասնչորսերորդ [աշխարհն է] Տայքը, Գուգարքին հարևան, ամ-րոցներով ու բերդերով հարուստ, ունի ութ գավառ. Կող (գավառ) արևելյան մասում, որտեղից բխում են Կուր գետի աղբյուրները Կրիակունք կոչված գյուղից: Եվ Կուր գետը (այստեղից) հոսում է դեպի արևմուտք Արտահան երկայնանիստ գավառով, ապա դառնում է դեպի հյուսիս և իջնում է Սամցխե (գավառը), որից հետո դառնում է դեպի արևելք մինչև Կասպից ծովը:*

*Իսկ Կող գավառից արևմուտք գտնվում են Բերդացփոր, Պարտի-զացփոր, Ճակք, որից արևելք և հարավ (գտնվում են) Բուղխա, Ոքաղե և Ազորդացփոր գավառներն իրենց [համանուն] գետակներով, որոնք խառնվելով իրար՝ թափվում են Ոոհ գետը: Այս գավառներից արևմուտք է Արսյացփոր (գավառը)՝ Պարխար լեռների փեշերին, որտեղից հոսում է Ոոհ գետը, որը, գալով Սպեր (գավառից), անցնում է Թուխարք բերդով Կղարջք (գավառը), այստեղից էլ՝ Եգր (աշ-խարհ), Նիգալ, Մրուղ և Մրիտ գավառներով հոսելով, թափվում է Պոնտոսի ծովը, որը եգերացիները կոչում են Ակամսիս, իսկ Խաղ-տիքը՝ Կակամար: Տայքում կա թուզ, թթու նուռ, ատոոր[26], սերկևիլ, պտղախունկ և նուշ:*

*Տասնհինգերորդ աշխարհն է Այրարատը, վերոհիշյալ աշխարհնե-րի մեջտեղը և ունի քսաներկու գավառ: Բարձր Հայքի կողմն է Բաս-յան (գավառը), որի միջով անցնում է Երասխը, որը գետանում է Մուրցամոր գետից: Երասխ գետը բաժանում է, թողնելով հարավ Հավնունիք և Գաբեղյանք (գավառները), իսկ հյուսիսում՝ Աբեղյանք (գավառը): Այնուհետև Երասխը հոսում է Արշարունիք գավառով, որից հարավ են գտնվում Բագրևանդ և Ծաղկոտն գավառները, իսկ*

*դեպի հյուսիս՝ Վանանդ և Շիրակ (գավառները)։ Այս գավառներից է հոսում Ախուրյան գետը Մեծագետ վտակով, [որ գալիս է Ծովակ Հյուսիսո յճից] և, անցնելով Մավրիկապոլիս, այսինքն՝ Շիրակաշատ ավանը, և Մրենն ու Երվանդաշատ քաղաքը, թափվում է Երասխ։*

*Եվ Երասխը, Արմավիր քաղաքը Արագածոտն (գավառով) և Արագած լեռնագագաթը, որտեղից բխում են Մեծամոր գետի աղբյուրները, [և Արայի լեռը] թողնում է հյուսիսային կողմը։ [Ապա, Երասխը հոսելով դեպի արևելք, հարավում թողնում է Ճակատք և Մասյացոտն գավառները և] լեռնագագաթ [Ազատ Մասիսը]։ Եվ Մասիս սարը, որի ստորոտին տարածվում է Կոգովիտ գավառը, դեպի հարավ է թողնում Երասխ գետը։ Իսկ Արածանի գետը սկիզբ է առնում Ծաղկոտն (գավառից), Ոսկիք կոչվող տեղից և, գնալով դեպի հյուսիս, պատելով Նպատական լեռնագագաթը Բագավան գյուղի մոտ, խառնվում է Բագրևանդ գետին։*

*[Արագածի փեշերից հյուսիս (գտնվում է) Վերին Տաշիրը (՞) և Աշոցք գավառը]։ Իսկ [Արագածից] արևելք (գտնվում է) Նիգ (գավառը), որտեղից բխում են Քասախ գետի աղբյուրները, [և նրանից (Նիգ գավառից) արևելք գտնվում են Կոտայք և Մազազ գավառները, իսկ դրանցից հյուսիս՝ Վարաժնունիք գավառը, որի միջով անցնում է Հրազդան գետը]։*

*[Հրազդան գետը] անցնում է Վաղարշապատ քաղաքից դեպի արևելք, որտեղ գտնվում է Մայր եկեղեցին՝ Կաթողիկեն, և մարտիրոսուհիների մատուռները*[27]*, որից (Վաղարշապատից) դեպի արևելք բխում են Ասպահեն գետի աղբյուրները, այսինքն՝ Խողմորը, որը խառնվում է Մեծամոր գետին։ Ապա դրանցից արևելք է Ազատ գետը, և հիրավի ազատ, որի ակունքները բխում են Գեղ լեռնագագաթից, Սախուրակ տեղում, և իջնելով դեպի Դվին (քաղաքը)՝ ոռոգում է ամբողջ Հայոց Ոստանը։ Անցնելով հարավ, [Ազատ գետը] թափվում է Երասխ, որոնց միջև կառուցված է Արտաշատ քաղաքը, որտեղ հին ժամանակները գտնվում էր Մեծամորի գետախառնուրդը, իսկ այժմ, փոխվելով Մեծամորի հունը, (այն) խառնվում է (Երասխին) [Արտաշատ քաղաքի] արևմտյան կողմը։*

*Դվին [Ոստանից] դեպի արևելք գտնվում են Ուրծաձոր և Արածո Կողմն գավառները, մտնելով Վայոց ձոր գավառի թիկունքը, և Շարուր դաշտը, որի միջով հոսում է Արփանյալ գետը և, անցնելով Մարավան քաղաքը, դեպի հարավ, թափվում է Երասխ գետը։*

*Եվ Այրարատ (աշխարհը) ունի լեռներ, գետեր և պիտանի դաշտավայրեր, որսի կենդանիներ և թռչուններ, և ամենայն պարարտություն*

*և Գայլատու ծովակը: Ունի և սիզաբերյալ արմատի որդը, (որն օգտագործում են) իբրև զարդ կարմիր գույնի*[28]*:*

***Սրանով վերջանում է ամբողջ Հայաստանի նկարագրությունը:***

*1. Համապատասխանում է միջնադարյան հայկական սկզբնաղբյուրների կողքին:*

*2. Խոսքը Կապուտան, Բզնունյաց, Գեղարքունյաց, Ծովք, Գայլատու և Ծովակ Հյուսիսո (Ցելի) լճերի մասին է:*

*3. **Արտիկ** – վայրի ոչխարի (Առն) էգը:*

*4. **Կըկիթ** – այծյամի (վիթ) էգը:*

*5. Խոսքը արածող (ճարակող) թռչունների մասին է:*

*6. Տվյալ պատմաշրջանում առյուծների առկայությունն այդ տարածքում տարակուսելի է համարվում:*

*7. **Դեզհուկ** – բովանդակ հայ մատենագրության մեջ այս թռչունի եզակի հիշատակությունն է, ուստի նրա տեսակը մնացել է անհայտ:*

*8. Սա ալակի մասին միակ վկայությունն է: Ենթադրելի է, որ խոսքը արծաթի հանքերի մասին է:*

*9. Անորոշ տեսակի հանքանյութ, որի մասին միակ վկայությունն է:*

*10. Հիշյալ կղզիներն այժմ գոյություն չունեն: Լճի մակերևույթի բարձրացման հետևանքով դրանք մնացել են ջրի տակ:*

*11. **Ուղխ** – խոսքը հեղեղատի մասին է:*

*12. **Գահրչակ** – անծանոթ մրգի անուն, տե՛ս **Ստ. Մալխասյանց,** Հայերեն բացատրական բառարան, հատ. I, էջ 407:*

*13. Թուփ, որի մանր պտուղներն օգտագործվում են որպես քնաբեր դեղամիջոց:*

*14. Ոսկեգույն, դեղին ներկ:*

*15. **Շահդանակ** – խոսքը կանեփի հատիկի մասին է:*

*16. **Ցիռ** – վայրի էշ:*

*17. Քաղաք, որը հավանաբար գտնվել է Երասխ գետի ձախ ափին՝ Խուդափերինի կամրջի մոտ:*

*18. Մշտադալար, անուշահոտ բույս:*

*19. Գետնասնկի մի տեսակ:*

*20. Խոսքը պաղլեղաքարի (շիբ) մասին է:*

*21. **Վարնկենի** – այստեղ օգտագործվել է մերձարևադարձային պտուղների նշանակությամբ:*

*22. Մերձարևադարձային բույս:*

*23. **Կատակ** – կաչաղակի կամ ագռավի տեսակին պատկանող թռչուն:*

*24. **Անալութ** – հավանաբար՝ եղջերու:*

*25. Մշտադալար թուփ, հայտնի է իր կարծր, դեղնագույն փայտով:*

*26. Մանր, կարմրագույն թթվաշ պտուղ, հայտնի է նաև կծոխուր անունով:*

*27. Նկատի ունի Հռիփսիմե և Գայանե կույսերի հիշատակին հիմնված վկայարանները: Հետագայում դրանց տեղում կառուցվեցին Ս. Հռիփսիմե և Ս. Գայանե վանքերը:*

*28. Հավանաբար ակնարկում է որդան կարմիր ներկը:*

## ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՏՆԵՐԸ ՎԱՂ ԱՎԱՏԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ԳԱՀՆԱՄԱԿԻ

*Գահնամակը Արշակունյաց Հայաստանի, ինչպես նաև մարզպանության շրջանի հայոց նախարարների արքունիքում ունեցած տեղերի, գահերի կամ պատվաստիճանների հրովարտակ է։ Նախարարների գահակալությունը որոշվում էր նրանց տնտեսական ու ռազմական հզորությամբ։ Այն վավերացվում էր թագավորի կողմից՝ հատուկ հրովարտակով։ Գահնամակի բնագիրը հայտնաբերել է Գ. Ախվերդյանը մի ձեռագրում, որին այն կցված է եղել որպես պահպանակ։ Պատվաստիճանների այս ցուցակը, ինչպես երևում է նրա առաջաբանից, կազմել և Սասանյան արքունիքի վավերացման է ներկայացրել Հայոց կաթողիկոս Սահակ Պարթևը (387-439)։ Մեզ են հասել Գահնամակի մի քանի այլ տարբերակներ, որոնք միմյանց նկատմամբ խիստ հակասական են, բացի այդ, դրանք լրիվ չեն արտահայտում հայկական բոլոր նախարարությունները։*

*Սահակ Պարթևին վերագրվող Գահնամակում չնայած հիշատակվում է ընդամենը 70 նախարարական գահ, սակայն այլ օրինակներում դրանց թիվը հասնում է մինչև 167-ի։ Հիշատակություններ կան նաև Հին Հայաստանում 400, անգամ 900 նախարարական գահերի մասին։ Գահնամակի բնագիրը մեզ է հասել խիստ աղճատված ու եղծված վիճակում, որը դժվարացնում է դրա լրիվ ու ճիշտ վերածնությունը։ Գահնամակն առաջին անգամ հրապարակել է Մ. Էմինը՝ Մովսես Խորենացու Պատմության ռուսերեն հրատարակությունում (Մոսկվա, 1858, էջ 358-360)։ Գահնամակի լավագույն և մանրամասն ուսումնասիրությունը պատկանում է Ն. Ադոնցին (տե՛ս* **«Армения в эпоху Юстиниана»**, *էջ 249-297, տե՛ս նաև նույնի հայերեն թարգմանությունը, Երևան, 1987, էջ 280-330)։*

*Գահնամակի առաջաբանի ստորև բերված տեքստը տրվում է ըստ Ստ. Մալխասյանցի թարգմանության (տե՛ս Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Երևան, 1968, էջ 369-371)։*

### *Գ Ա Հ Ն Ա Մ Ա Կ*

*Ես՝ Սահակս[1], խնդիր հարուցի Արտաշես թագավորի[2] արքունի դռնում, Տիզբոնում, ասելով, որ ես տեսա ռամական նամակը[3] Արտաշիրի[4] դիվանում, քաղոց ամսի 17-ին, և ես՝ Սահակ կաթողիկոսս, գիր գրեցի Վռամ արքայից արքային[5] և բարերարին, թե թո՛ղ ձեր*



**Գահնամակ. պատառիկ**

*բարերարությունը հրաման տա՝ հայոց ազատների և տանուտերների ցուցակագրություն կազմել ձեր դիվանում, ինչպես առաջ եղել է հայոց ազգի մեջ, որպեսզի այսուհետև հայոց ազատների և տանուտերների գահերը հայտնի լինեն: Ըստ այսմ, Ներսեսը[6]՝ արքայից արքայի հրամանով և ես՝ Սահակ կաթողիկոսս, կնքեցինք գահնամակը և վրան դրինք արքայից արքայի և մեր մատանիները: Եվ այսպես է արդարև և ճշմարիտ:*

**[Առաջին իշխանը Հայոց և Մաղխազը[7]]**

1. *Սյունյաց տեր*
2. *Ասպետը[8]*
3. *Արծրունյաց տեր*
4. *Մամիկոնեից տեր*
5. *Ծահապը՝ Ծոփաց տեր*
6. *Մոկաց տեր*
7. *Ռշտունյաց տեր*
8. *Վահունյաց տեր*
9. *Կասպեից տեր*
10. *Անձավացյաց տեր*
11. *Ապահունյաց տեր*
12. *Կամսարականը*
13. *Այլ Ապահունի*
14. *Վանանդացին*
15. *Ամատունյաց տեր*
16. *Գողթան տեր*

17. Գնունյաց տեր
18. Այլ Անձավացի
19. Տայոց [տեր]
20. Բասենի դատավորը
21. Գնթունյաց տեր
22. Վարձավունին
23. Գարդմանա տեր
[24. Մաղխազ][9]
25. Սահառունին
26. Գաբեղենից տեր
27. Աբեղենից տեր
28. Սյունյաց երկրորդը
29. Արծրունյաց երկրորդը
30. Արծրունյաց երրորդը
31. Մամիկոնեից երկրորդը
32. Ռոփսյանը
33. Գաշոցյանը[10]
34. Դիմաքսյանը
35. Բուխա Դիմաքսյանը
26. Այլ Աբեղյանը
37. Այլ Դիմաքսյանը
38. Պալունին
39. Առավեղյանը
40. Աչահմարյանը[11]
41. Համբուժյանը
42. Վարասպակյանը
43. Ջյունականը
44. Ակեացին
45. Զարեհավանյանը
46. Ընծայեցին
47. Մանդակունին
48. Սղկունին
49. Տայգրյանը
50. ԵրմանԹունին
51. Սպանդունին
52. Առավենյանը
53. Տրունին
54. Մամբերացին[12]
55. Հավնունին
56. Բժնունին
57. Քաջբերունին
58. Մեհնունին
59. Նախճերին
60. Քաղաքապետն արքունի
61. Որսապետն արքունի
62. Արտաշեսյանը
63. Վանանդացի երկրորդը
64. Ցուլը
65. Վիժանու[նի]
66. Աքածու
67. Շիրակի Դիմաքսյան
68. Գազրիկյանը
69. Մարացյան տ[եր]
70. Վագրասպու[նին]

1. Այսինքն՝ Հայոց կաԹողիկոս Սահակ ՊարԹևը:

2. Խոսքը վերաբերում է Հայոց Արտաշես IV Թագավորին (422–428):

3. **Ռամական նամակ** – Ն. Ադոնցի կարծիքով այստեղ խոսքը զինվորական միավորման կամ գնդի ցուցակի մասին է: Յուրաքանչյուր նախարար ուներ սահմանված քանակուԹյամբ զորաջոկատ, որոնց ցուցակն էլ հենց կոչվում էր ռամական նամակ:

4. Ն. Ադոնցը ենԹադրում է, որ խոսքը դարձյալ նույն հայոց Թագավոր Արտաշես IV-ի մասին է:

5. Նկատի ունի Սասանյան Վռամ IV Կրմանին (388–399):

6. Ն. Ադոնցը ենԹադրում է, Թե այս Ներսեսը Գահնամակի հեղինակներից է:

7. Մաղխազը Խորխոռունիների տոհմական տիտղոսն է: Ն. Ադոնցի կարծիքով

*թյուրիմացության հետևանքով է Մաղխազը հայտնվել Գահնամակի առաջին տողում:*

*8. Խոսքը Բագրատունյաց տան մասին է:*

*9. Ն. Ադոնցի տեղադրումն է, քանզի բնագրում ԻԴ (24-րդ) համարը բացակայում է:*

*10. Ն. Ադոնցն ուղղել է Աշոցյան:*

*11. Ն. Ադոնցն ուղղել է Աշխադարյան:*

*12. Ն. Ադոնցն ուղղել է Տամբերացի:*

## ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐՆ ԸՍՏ ԶՈՐԱՆԱՄԱԿԻ

***Զորանամակը դասակարգում է Արշակունյաց Հայաստանի ռազմական ուժերն ըստ չորս զորավարությունների (Արևմտյան, Արևելյան, Հյուսիսային և Հարավային):***

***Զորանամակը պահպանվել և մեզ է հասել միակ ձեռագիր օրինակով, որը կցված է եղել Անանիա Շիրակացու Ժամանակագրությանը: Այն առաջին անգամ հրատարակել է Հովհ. Շահխաթունյանցը (1842), վերահրատարակել են Ղ. Ալիշանը (1890) և Ն. Ադոնցը (1908):***

***Զորանամակի ստորև բերվող տեքստը տրվում է ըստ Ն. Ադոնցի հրատարակության (տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, էջ 251-252):***

### ԶՈՐԱՆԱՄԱԿ

| Արևմտյան կողմ | | | Արևելյան կողմ | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Անգեղ տուն | – 3400 | 1 | Սյունի | – 19.400 |
| | Աղձնյաց բդեշխը | – 4000 | | Ամատունի | – 200 |
| | Բզնունական | – 3000 | | Ավածացին | – 200 |
| | Մանավազյան | – 1000 | | Վարաժնունի | – 200 |
| 5 | Բագրատունի | – 1000 | 5 | Տամբարացի | – 100 |
| | Խորխոռունի | – 1000 | | Մազազացի | – 100 |
| | Ծոփացի | – 1000 | | Ցողկեպան | – 100 |
| | Վահունի | – 1000 | | Գրզնունի | – 50 |
| | Ապահունի | – 1000 | | Վառնունի | – 50 |
| 10 | Գնունի | – 500 | 10 | Բաքան | – 50 |

Բասենացի – 600
Պալունի – 300
Ընծաքին – 4000
Մանդակունի – 300
15 Սաղկունի – 300
Վարաժնունի – 300
Այծենական – 100
Առվենյան – 300
Վարաժնունյան – 100
Սպան(դ)ունի – 300
21 Ռափսյան – 100

Կճրունին – 50
Գուկանը – 50
Պատսպարունին – 50
Գազրիկյան – 50
15 Վիժանունին – 50
Ջանդաղան – 50
Սողացի – 50
Աքածեցի – 50
Ասճչնյան – 50
Կինան – 50
21 Տազրյան – 50

### Հյուսիսային կողմ

1 Գուգարաց բդեշխը – 4500
Կամսարական – 600
Կասպեցի – 3000
Ուտեացի – 1000
5 Ծավդեացի – 1000
Տայեցի – 600
Մամիկոնյանը – 1000
Վանանդացին – 1000
Գարդմանեցին – 1000
10 Որդունի – 700
Առվեղյանքը – 500
Աչոցյան – 500
Դիմաքսյան – 300
Գնթունի – 300
15 Բոխայեցի – 300
Գաբեղյան – 300
Աբեղյան – 300
Հավնունի – 300
Սահառունի – 300
20 Ձյունականը – 300
Աշխադարյան – 100
22 Վարազարտիկյան – 100

### Հարավային կողմ

1 Կաղմեացի – 13.200
Կորդվացի – 1000
Արծրունի – 1000
Ռշտունի – 1000
5 Մոկացի – 1000
Գողթնեցի – 500
Անձևացի – 500
Հարուժյան – 100
Տրպատունի – 100
10 Մեհնունի – 100
Ակեացի – 300
Զարեհվանյան – 300
Եր(վ)անթունի – 300
Համաստունյան – 100
15 Արտաշեսյան – 300
Սագրատունի – 100
Աբրահամյան – 100
Տրունի – 300
Բուժունի – 200
20 Քաջբերունի – 100
Բողունի – 100
22 Մուրացան – 300

*Ռազմիկների թիվը՝ ըստ տոհմերի, լինում է ութսուն և չորս հազար, չհաշված արքունիքի սպասավորները, այսինքն՝ ոստանիկները, որոնք կովի են դուրս գալիս թագավորի հետ, և մարդպետական կոչվածները, որոնք խնդիր ունեն պահպանել թագուհուն և արքունի գանձերը: Հայոց զորքի թիվը, բոլորը միասին վերցրած, հավասար է հարյուր քսան հազարի:*

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԾ ՀԱՅՔՈՒՄ III ԴԱՐԻ ՎԵՐՋԵՐԻՆ ԵՎ IV ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ

### ՏՐԴԱՏ III ՄԵԾԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ

***Ագաթանգեղոսի «Հայոց պատմությունից» ստորև բերված հատվածները տալիս ենք ըստ Ա. Ն. Տեր-Ղևոնդյանի աշխարհաբար թարգմանության, որը լույս է տեսել 1977 թ.՝ «Հայ մատենագիրներ» մատենաշարով:***

*ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ*

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

*39. Այդ օրերում գոթերի իշխանը զորաժողով արեց և բազում զորք կուտակելով եկավ պատերազմելու հունաց իշխանի դեմ[1]: Այսօրինակ պատգամ հղեց, թե՝ «Ինչո՞ւ ենք անմտորեն ելնում պատերազմի, մեր զորքը սպառում և միաժամանակ երկրին վտանգ ու տագնապ հասցնում: Ահավասիկ ես քո դեմ եմ դուրս գալիս իբրև ախոյան մեր զորքի միջից և դու էլ իմ դեմ՝ հունական կողմից: Գնանք հասնենք մարտի վայրը և եթե ես քեզ հաղթեմ, հույներն ինձ կհնազանդվեն, իսկ եթե դու ինձ հաղթես, մեր կյանքը քեզ կպատկանի ու կհնազանդվենք քեզ և առանց արյան ու կոտորածի երկու կողմերի համար էլ խաղաղություն կլինի»:*

*40. Երբ Հունաց թագավորն այս ամենը լսեց՝ վախեցավ, որովհետև չէր կարող հանձն առնել օրինավոր պատրաստությամբ գունդ առ գունդ ճակատել և ոչ էլ կարող էր սույն պատգամի պահանջին համաձայնվել, քանի որ տկար ոսկորներ ուներ և ահաբեկվելով զարհուրեց ու չգիտեր ինչ պատասխան տալ այդ խնդրին:*



**Տրդատ III Մեծ**
**(գործ՝ Հ. Հովնաթանյանի)**

*44. Ապա Թագավորը պատմեց իշխաններին գոթերի Թագավորի բոլոր պատգամները: Այդ ժամանակ Լիկիանեսը սկսեց խոսել արքայի հետ և ասաց. «Թող իմ տիրոջ սիրտը բոլորովին չգարհուրի, քանզի այստեղ քո պալատում մի մարդ կա, որի միջոցով այս գործը գլուխ կգա: Նրա անունը Տրդատ է՝ Հայոց աշխարհի Թագավորական տոհմից»: ... Այնժամ հրաման տվեց, և Տրդատին բերեցին Թագավորի առջև...: Ապա մարտի պատրաստության ժամ որոշեցին, առավոտյան պատերազմով իրար դեմ ելնելու:*

*45. Իսկ մյուս օրն առավոտյան հրամայեց (կայսրը) ծիրանի պատմուճանը Տրդատի վրա նետել, և զարդարեցին կայսերական զարդով, գցելով նրա վրա Թագավորական նշանը, ոչ ոք չգիտեր նրա մասին: Հրաման ելավ ամենքին, Թե սա ինքն իսկ կայսրն է: ... Երբ միմյանց դիմաց կանգնեցին կայսերակերպն ու (գոթերի) Թագավորը՝ ձիերին մտրակելով իրար հասան: Այնտեղ կայսերակերպը հաղթեց Թագավորին և բռնելով նրան բերեց կանգնեցրեց կայսեր առաջ:*



**Դիոկղետիանոս Ավգուստոս**

*46. Այն ժամանակ Թագավորը հույժ բարձրացրեց Տրդատին և մեծամեծ պարգևներ տվեց նրան, Թագ դրեց գլխին և ծիրանի պատմուճաններով զարդարելով՝ պատվեց նրան[2]: Կայսերական զարդով չքեղացնելով մեծարեց և օգնական բազում զորք հանձնելով՝ ուղարկեց նրան սեփական Հայոց աշխարհը:*

*47. Հաղթական մարտում քաջություններ գործելուց հետո Մեծ Հայքի Տրդատ արքան վերադարձավ հունաց կողմերից: Թագավորը[3] չարժվեց եկավ Հայոց կողմե-*

*րը և հասնելով գտավ այնտեղ պարսից մեծաքանակ զորք, որ երկիրը գրավել էր, հպատակեցրել: Շատերին կոտորեց և չատերին փախստական դարձնելով՝ պարսից կողմերը քշեց, իսկ հայրենի տերությունը նվաճեց ու զորացավ նրա սահմանների վրա[4]:*

*1. Հայ մատենագրության մեջ հռոմեական, ապա բյուզանդական կայսրերին հաճախ անվանում են «հունաց իշխան» կամ «հունաց թագավոր»: Տվյալ դեպքում խոսքը Հռոմի Դիոկղետիանոս կայսեր (284-305) մասին է: Գոթական ցեղերի այս արշավանքը Հռոմի դեմ պետք է տեղի ունեցած լինի 284-287 թթ. միջև:*

*2. Հռոմեացիները Տրդատ III-ին Մեծ Հայքի թագավոր են հռչակել 287 թվականին, իսկ Մեծ Հայքում փաստացի նա գահակալել է 298 թվականից՝ Մծբինի 40-ամյա պայմանագրից հետո:*

*3. Այսինքն՝ Տրդատ III-ը:*

*4. Հայ-հռոմեական զորքերը, Տրդատ III-ի և հռոմեական զորավար Գալերիոս Մաքսիմիանոսի հրամանատարությամբ, 297 թ. Բասենի Ոսխա գյուղի մոտ ջախջախեցին պարսից Ներսես արքայի բանակներին և ազատագրեցին Հայաստանը:*

## ՍԵՔՍՏՈՍ ՌՈՒՓՈՍԸ ՄԾԲԻՆԻ 40-ԱՄՅԱ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍԻՆ

***Սեքստոս Ռուփոսը III դարի վերջերում և IV դարի սկզբներում ապրած հռոմեացի հեղինակ է: Ռուփոսը գրել է «Հռոմեական ժողովրդի համառոտ պատմություն» աշխատությունը, որը լույս է տեսել «Rufi Festi (Sexti) Breviarium rerum gestarum populi Romani, ed. Förster, 1874» հրատարակությամբ:***

***Նրա հաղորդած տեղեկությունը՝ պարսիկների դեմ հռոմեական բանակի տարած հաղթանակի մասին, գրաբար թարգմանությամբ մեջ է բերել Ա. Մ. Գարագաշյանը «Քննական պատմություն Հայոց» աշխատության II հատորում (Թիֆլիս, 1895, էջ 277), որից ստորև բերված հատվածն աշխարհաբարի է վերածել Ա. Գ. Աբրահամյանը:***

### *ՀՌՈՄԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՌՈՏ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

*Դիոկղետիանոս կայսեր ժամանակ[1] (հռոմեական բանակը) մեծ հաղթանակ տարավ պարսից դեմ: Գալերիոս կեսարն[2] առաջին ճակատամարտում փոքրիկ զորագնդով թեև թափով հարձակվեց թշնամու անթիվ բազմության վրա, բայց պարտություն կրեց և ետ դարձավ[3]: Դիոկղետիանոսը Գալերիոսին ընդունեց անչափ ցասումով. հրամայեց նրան մեկ հրասախ[4] ոտքով քայլել իր կառքի առջևից, թեև նա կրում էր ծիրանի: Մեծ դժվարությամբ Գալերիոսը թույլ-*

*տվություն ստացավ կրկին անգամ փորձելու իր բախտը զենքի զորությամբ: Իր բանակն ամրացնելով նոր գնդերով, նա բանակ դրեց սահմանագլխի Դակիա կոչվող վայրում: Հասնելով Մեծ Հայք, Գալերիոսը երկու հեծյալներով անձամբ գնաց հետախուզության՝ ծանոթանալու համար թշնամու զորությանը: Ապա քսանհինգ հազարով արշավեց պարսից ամրության վրա: Հանկարծակի հարձակվեց թշնամու անթիվ զորքի բազմության վրա և մեծ ջարդ տվեց[5]: Պարսից Ներսեհ թագավորը[6] հազիվ կարողացավ փախչել և ազատվել, բայց նրա կանայք և աղջիկները գերի ընկան և պահվեցին մեծ ողջախոհությամբ: Սրա վրա զարմանում էին պարսիկները և խոստովանում, որ հռոմեացիները բարձր են իրենցից ոչ միայն զենքի զորությամբ, այլև բարքի ազնվությամբ: Եվ նրանք վերադարձրին Միջագետքի Անդրտիգրիսյան հինգ նահանգները[7]: Խաղաղություն կնքվեց ի նպաստ կայսրության, որը տևեց մինչև մեր օրերը[8]:*

*1. Խոսքը Հռոմի կայսր Գայոս Վալերիոս Ավրելիոս Դիոկղետիանոսի (284-305) մասին է:*

*2. Նկատի ունի Դիոկղետիանոսի կառավարչակից Գայոս Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոսին, հռոմեական կայսր (293-311):*

*3. Գալերիոսի պարտությունը պարսկական զորքերից տեղի է ունեցել 296 թ.՝ Խառանի ճակատամարտում:*

*4. **Հրասախ** (փարսաղ) – երկարության միավոր, հավասար է եղել 30 ասպարեզի, այսինքն՝ 5000 մետրի:*

*5. Այս ճակատամարտը տեղի է ունեցել 297 թվականին:*

*6. Խոսքը վերաբերում է պարսից Ներսեհ թագավորին (263-302):*

*7. Այսինքն՝ Անգեղ տունը, Ծոփքը, Աղձնիքը, Կորդուքը և Ծավդեքը:*

*8. Հռոմեացիների և պարսիկների միջև այս պայմանագիրը կնքվել է 298 թ. Մծբինում՝ 40 տարի ժամանակով:*

## ՊԵՏՐՈՍ ՊԱՏՐԻԿԻՈՍԸ ՄԾԲԻՆԻ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍԻՆ

***Պետրոս Պատրիկիոսը VI դարի բյուզանդական ամենաաչքի ընկնող դիվանագետներից է: Նա հայտնի է նաև որպես պատմագիր: Պատրիկիոսի գրչին են պատկանում բազմաթիվ երկասիրություններ, որոնցից արժեքավոր էր հատկապես «Պատմությունը»: Սա նվիրված էր երկրորդ եռապետությունից մինչև Հուլիանոս կայսեր ժամանակաշրջանի Հռոմի պատմությանը: Դժբախտաբար, Պատրիկիոսի սույն երկից մեզ են հասել միայն չնչին քաղվածքներ՝ կատարված XI***

***դարում, Կոստանդին Ծիրանածինի կողմից։***

***Պետրոս Պատրիկիոսի բնագրից ստորև բերված հատվածը ժամանակին ռուսերեն է թարգմանել Ն. Ադոնցը։ Այժմ տալիս ենք դրա հայերեն թարգմանությունը (տե՛ս Ն. Գ. Ադոնց, Երկեր, հատ. Բ, Երևան, 2006, էջ 96-99)։***

*ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

*Երբ Գալերիոսն ու Դիոկղետիանոսը[1] Մծբինում հանդիպեցին, միասին խորհրդակցելով՝ որպես դեսպան Պարսկաստան ուղարկեցին մեմորիայի մագիստրոս Սիկորիոս Պրոբոսին։*

*Նարսեհը[2] նրան սիրալիր ընդունելություն ցույց տվեց՝ հույս ունենալով, որ նրանք կկատարեն իրենց խոստումը, բայց ընդունելությունը հետաձգվում էր...*

*Դեսպանության գլխավոր դրույթները հետևյալներն էին.*

*1) Արևելքում հռոմեացիները ստանան Անգելենեն (Անգեղ տուն) Սոփենեի (Ծոփք) հետ և Արզանենեն (Աղձնիք) Կորդուենեի (Կորդուք) և Զաբդիկենեի (Ծավդեք) հետ[3]։*

*2) Տիգրիս գետը լինի սահմանագիծ երկու պետությունների միջև։*

*3) Մարաստանի սահմանի վրա ընկած Զինթա ամրոցը[4] լինի Հայաստանի սահման։*

*4) Իբերիայի թագավորն իր տիրակալական իշխանության տարբերանշանները ստանա հռոմեացիներից։*

*5) Առևտրական հարաբերությունների համար կետ ծառայի Տիգրիսի ափին գտնվող Մծբին քաղաքը։*

*Նարսեհն այդ բոլորը լսելով՝ հակառակ իր կամքին՝ պետք է ամեն ինչի համաձայներ... Այսպիսով առաջարկություններն ընդունվեցին։ Նարսեհին ետ վերադարձվեցին [գերի ընկած նրա] կանայք ու երեխաները։*

*1. Գալերիոսն Դիոկղետիանոս կայսեր փեսան էր և գահակիցը։*

*2. Խոսքը Պարսից արքա Ներսեհի (263-302) մասին է, որը հռոմեացիներին պարտվելուց բացի, գերի է թողել իր տիկնոջն ու դուստրերին։*

*3. Կայսրությանն անցած հայկական այս հինգ շրջանները, կազմեցին այսպես կոչված «Սատրապական Հայաստան» վարչական միավորը, որը երկար ժամանակ պահպանեց իր ներքին անկախությունը։*

*4. Զինթա ամրոցը տեղադրվում է Կապուտան (Ուրմիո) լճի հարավ-արևմուտքում, Զագրոսի լեռների արևելակողմում։*

## ՏՐԴԱՏ III-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

***Մովսես Խորենացու «Հայոց պատմությունից» ստորև տրված հատվածները բերել ենք Ստ. Մալխասյանցի թարգմանությունից, որը բնագրի հետ համեմատել ու խմբագրել են Վ. Դ. Առաքելյանը և Ա. Ա. Աբրահամյանը (տե՛ս Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Երևան, 1968):***

*ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻ*

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

*Գիրք Բ*

***Գլ. ՁԲ.*** *Որովհետև չկա ստույգ պատմություն առանց ժամանակագրության, ուստի մանրամասն հետազոտությամբ գտանք, որ Տրդատը թագավորել է Դիոկղետիանոսի երրորդ տարում*[1]*, և այս կողմերն է եկել մեծ զորքով: Երբ նա Կեսարիա հասավ, նախարարներից շատերը նրան ընդառաջ գնացին: Եվ երբ հասավ մեր երկիրը, տեսավ, որ Օտան*[2] *սնուցել է իր Խոսրովիդուխտ քրոջը և պահպանել է գանձերն ու ամրոցը մեծ համբերությամբ. և իսկապես էլ նա համբերող էր, ժուժկալ և շատ խելացի, որովհետև նա թեպետ աստծու մասին ճշմարտությունը չիմացավ, բայց կուռքերի ստությունը հասկացավ: Նրա պես էր և նրա սան Խոսրովիդուխտը, որ մի օրինավոր համեստ կույս էր և ուրիշ կանանց նման չուներ բոլորովին անդուռ բերան:*

*Տրդատը Հայաստանի հազարապետ է նշանակում Օտային և շնորհակալությամբ պատվում է նրան, մանավանդ պատվում է իր դայեկորդի Արտավազդ Մանդակունուն, որ պատճառ եղավ իր փրկության և հայրենական փառքին հասնելուն. ուստի նրան է հանձնում հայոց զորքերի սպարապետությունը: Նույն պատճառով նրա քրոջ ամուսին Տաճատին Աշոցք գավառի (տեր) է դարձնում: Սա էր, որ հետագայում հայտնեց իր աներ Արտավազդին, և սա թագավորին, նախ՝ որ Գրիգորն Անակի որդին է, և հետո՝ Գրիգորի որդիների մասին. այս բաները նա իմացել էր Կեսարիայում ապրած լինելով:*

*Իսկ քաջ Տրդատն արագ-արագ բազմաթիվ ճակատամարտեր տալով նախ Հայաստանում և ապա Պարսկաստանում՝ ինքն անձամբ տանում է հաղթությունը:*

*1. Խոսքը Տրդատ III-ի առաջին գահակալության մասին է 287 թվականին:*

*2. Օտան Ամատունյաց տոհմից էր:*

## ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅԱՆ ՄՈՒՏՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ

### *ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐՉԻ ԲԱՆՏԱՐԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

*48. Մեծ Հայքի արքա Տրդատի առաջին տարում (հայոց զորքերը) չարժվեցին եկան, հասան Եկեղյաց գավառը, Երիզա գյուղը[1], Անահիտի մեհյանը, որպեսզի այնտեղ զոհեր մատուցեն: Երբ անարժան գործը կատարեցին, իջան, տեղավորվեցին այն գետի ափին, որը Գայլ[2] է կոչվում:*

*49. Թագավորը եկավ մտավ վրանը, ընթրիքի բազմեց. երբ գինովցան, թագավորը հրաման տվեց Գրիգորին, որպեսզի պսակներ ու ծառերի ճյուղեր նվիրաբերի Անահիտի բագինին: Սակայն նա հանձն չառավ աստվածների երկրպագության պաշտամունքը կատարել:*

*122. Այսչափ հարցերից ու տանջանքներից, գանահարություններից ու բանտերից, գելարաններից ու կախաղաններից, դառն նեղություններից և ամեն խոշտանգումներից հետո, որոնք նա մեծ համբերությամբ հանձն առավ տեր մեր Հիսուս Քրիստոսի անվան համար, երբ թագավորն այս էլ իմացավ, թե իսկապես դա որդին է Անակ Պարթևի, որն սպանել էր նրա հորը՝ Խոսրովին, հրաման տվեց կապել ոտքերը, ձեռքերն ու պարանոցը, և տարան նրան Այրարատ գավառը, հանձնեցին Արտաշատ քաղաքի բերդի ղղյակը և իջեցրին ներքին վիրապը, որի խորությունից դուրս գալն անհնարին էր, որպեսզի իսկույն մեռներ: Այդ վիրապում նա մնաց տասներեք տարի:*

*124. Այն տասներեք տարիներում, որ Գրիգորը մնաց բանտի բերդում և Խորվիրապում, մի այրի կին, որ այդ բերդում էր, երազում հրաման ստացավ, որ օրական մի նկանակ պատրաստելով՝ Խոր Վիրապից վայր գցեր: Այսպիսով՝ Աստծո հրամանով նա կերակրվեց այնտեղ մնացած տարիներին:*

*1. Մեծ Հայքի Բարձր Հայք աշխարհի այս ավանում էր գտնվում Անահիտ դիցամոր պաշտամունքի գլխավոր կենտրոնը: Եկեղյաց գավառը, ի պատիվ դիցուհու, կոչվում էր նաև Անահտական:*

*2. Գայլը վտակն է Արևմտյան Եփրատի, որին միանում է Երզնկայի մոտակայքում:*

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ ՀՌԻՓՍԻՄՅԱՆ ԿՈՒՅՍԵՐԻ ՆԱՀԱՏԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ




***Ս. Գրիգոր Հայ***
***Ռուսական ձեռագիր Ավետարանից***
***(XVII դար)***

*137. Այդ ժամանակներում պատահեց, որ Դիոկղետիանոս կայսրը կամեցավ իր համար կին առնել, և այնուհետև իր տերության բոլոր կողմերն սկսեցին շրջել նմանահան ճարտար նկարիչներ, և դեմքի գեղեցկությունը, մրազարդ հոնքերը ճշգրտորեն, հասակին հարմար, համապատասխան ներկերով նկարում էին տախտակների վրա, որպեսզի դեմ դիմաց ցույց տան թագավորին՝ ի հաճույս նրա:*

*138. Այդ ժամանակ գալով Հռոմ քաղաքը, գտան կույսերի մի արգելավանք, որոնք լեռներում մեկուսացած, բուսակեր, ժուժկալ, պարկեշտ և սրբանվեր կանայք էին...*

*139. Երբ եկան հասան, բռնությամբ մտան առաքինի կանանց սուրբ կայանը, տեսնելով պարկեշտագեղ Հռիփսիմեին[1], սքանչելի տեսիլքով ապշած, զարմացած՝ նկարը տախտակի վրա նկարեցին և թագավորին հասցրեցին:*

*140. Երբ թագավորը տեսավ Հռիփսիմեի կերպարանքի նկարի հիասքանչ վայելչությունը, կատաղի ցանկության տռփանքով լցվեց, որովհետև հիմար, մոլեգին, անկարգ ցանկությունը ստիպում էր. [և նա] հարսանիքի ուրախության ժամ որոշելով, տագնապով շտապեց հարսանեկան ուրախությունն անել...*

*149. Սրանից հետո սուրբ Գայանեն Հռիփսիմե սանով ու մյուս պարկեշտ ընկերներով հանդերձ գնացին, հեռացան՝ փախուստ տալով, որպեսզի իրենց անձերը սրբությամբ պահպանեն...*

*150. Այն ժամանակ նրանք եկան հասան Հայոց երկիրը, Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը, որը նաև Նորաքաղաք է կոչվում, հայոց թագավորների նստավայրը: Այնուհետև եկան մտան այգես-*

*տանների հնձանները, որոնք շինված էին հյուսիսարևելյան կողմում: Սնվում էին իրենց ունեցվածքը քաղաքում վաճառելով, չունեին իրենց հետ ապրուստի միջոցներ, միայն թե նրանցից մեկը գիտեր ապակեգործության արհեստը, ապակյա ուլունքներ էր պատրաստում և իրենց օրական ապրուստի ու պարենի դրամն էին ճարում:*

*151. Այդ ժամանակ քիչ խռովություն չբարձրացավ Հունաց աշխարհում. ամեն կողմերում լարված որոնում էին, սուրհանդակներ ուղարկում, որ թերևս կարողանան նրանց գտնել: Պատվիրակ եկավ Մեծ Հայքի Տրդատ արքայի մոտ և ներկայացավ նրան Վաղարշապատ քաղաքում: Երբ հրովարտակը մատուցեց նրան, սա վերցրեց այն ուրախությամբ:*

*161. Արդ՝ նրանք գտնվում էին չենքերի հնձաններում, և երբ Հունաց մեծ թագավորի հրովարտակը հասավ Մեծ Հայքի արքա Տրդատին, պակաս խռովություն չեղավ Հայոց աշխարհում, քանզի պահպանում էին պողոտաների և բոլոր գավառների ամեն անցքերը և տարբեր կողմեր ելնելով իրարանցման մեջ փնտրում էին: Իսկ մեկը, տեսնելով, պատմեց նրանց մասին:*

*162. Երբ նրանց մասին իրողությունը հայտնի դարձավ, ապա երկու օր վահանափակ շրջապատեցին նրանց՝ հետևակ զորքի մի լեգեոնի հանձնարարելով պահել նրանց այնտեղ, ուր գտնվում էին: Ապա երկու օր անց Հռիփսիմեի պարկեշտության ու չքնաղ գեղեց-*



***Ս. Հռիփսիմեի նահատակությունը***
***Վասիլ II կայսեր ձեռագիր Հայսմավուրքից (979–989 թթ.)***

*կության համբավը հռչակվելով՝ բազմամբոխ հրապարակներում տարածվեց, և ամեն մարդ մյուսին իր զարմանքն էր հայտնում:*

*178. Արդ՝ սպասավորները բռնի տարան սուրբ Հռիփսիմեին՝ մերթ բարձրացրած, մերթ քարշ տալով...*

*208. Սրանից հետո մոտեցան ու պատառոտեցին նրանց հանդերձները և պրկեցին նրանց՝ յուրաքանչյուրին չորս ցցի վրա... սրով կտրեցին նրանց գլուխները:*

*209. Արդ՝ ամենը, որ նրանց հետ միաժամանակ եկել էին հռոմեացիների երկրից, և բոլորը միասին հասել մեր Հայաստան աշխարհը, ավելի քան յոթանասուն հոգի էին: Իսկ որոնք սպանվեցին սուրբ տիկնանց՝ Գայանեի ու Հռիփսիմեի հետ, նրանց հետ մեկտեղ, որ հիշվեցին նահատակների թվում, ընդամենը երեսունյոթ մարդ էին:*

*210. Նահատակվեց սուրբ Հռիփսիմեն սրբերի դասով մեկտեղ հոռի ամսի քսանվեցին երեսուներեք նահատակակից ընկերներով: Իսկ հոռի ամսի քսանյոթին սուրբ Գայանեն իր երկու ընկերներով, որոնք նրա հետ մարտնչեցին, պսակներ ընդունեցին և առան հաղթության թագը:*

*211. Արդ՝ վեց օր խոր տխրության և անտանելի տրտմության մեջ էր թագավորը, Հռիփսիմեի գեղեցկության նկատմամբ ունեցած տենչալի սիրո պատճառով: Այնուհետև, որսի ժամ որոշեց, բոլոր զորքերին հրամայեց հավաքել բերել որսի զենքերը, տագնապ գցել, որսի ցանցեր պատրաստել, թակարդներ լարել. կամենում էր որս անել Փառական Շեմակաց դաշտում:*

*1. Հռիփսիմյան կույսերի նահատակության ավանդությունը, ինչպես պարզված է, Ագաթանգեղոսի պատմության մեջ է մտցվել հետագայում:*

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ ՏՐԴԱՏ III-Ի ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅՈՒՆ ԸՆԴՈՒՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*212. Մինչդեռ կառքի վրա նստած թագավորը քաղաքից դուրս էր եկել, իսկույն նրա վրա տիրոջ պատուհասը հասավ, և պիղծ դևը խփելով թագավորին կառքից վայր տապալեց: Անմիջապես սկսեց մոլեգնել ու ինքն իրեն ուտել...*

*214. Այն ժամանակ Աստծուց տեսիլ երևաց թագավորի քրոջը, որի անունն էր Խոսրովիդուխտ: Արդ՝ եկավ պատմեց մարդկանց իր տեսիլքը՝ ասելով. «Ինձ տեսիլք երևաց այս գիշեր. մի մարդ լույսի նմանությամբ եկավ պատմեց ինձ, թե ձեզ վրա հասած հարվածներից բժշկություն չի լինի, եթե [մարդ] չուղարկեք Արտաշատ քաղաքը՝*

*այնտեղից բերելու կապյալ Գրիգորին: Նա գալով կսովորեցնի ձեզ ցավերից բուժվելու դեղը»:*

*215. Երբ մարդիկ լսեցին, սկսեցին ծիծաղել նրա խոսքերի վրա: Խոսեցին նրա հետ ու ասացին. «Ուրեմն դու էլ մոլեգնեցիր և դիվահար եղար: Ինչպե՞ս է, որ ահա տասնհինգ տարի նրան գցել են սոսկալի Խորվիրապը, և դու ասում ես, թե կենդանի է: Որտե՞ղ են նրա ոսկորները, նույն օրն իսկ, երբ նրան այնտեղ իջեցրին օձերի հենց տեսքից նույն ժամին մեռած կլինի»:*

*216. Սակայն նույն տեսիլքը դարձյալ երևաց կնոջը հինգ անգամ և սպառնալիքով կրկնեց, որ եթե տեսիլքը չուտ-չուտ չպատմի, մեծամեծ տանջանքներ կկրի, և մարդկանց ու թագավորի հարվածներն առավել ևս կսաստկանան մահվամբ ու պես-պես տանջանքներով: Այդ ժամանակ Խոսրովիդուխտը գնաց և մեծ երկյուղով ու զգուշությամբ պատմեց հրեշտակի խոսքերը:*

*217. Իսկ նրանք չուտափույթ այնտեղ ուղարկեցին մի ավագ նախարարի, որի անունն էր Օտա: Նա գնաց Արտաշատ քաղաքը՝ նրան վիրապի խոր բանտից հանելու: Երբ Օտան եկավ հասավ Արտաշատ քաղաքը, քաղաքացիք նրան ընդառաջ ելան՝ գալու պատճառը հարցնելու: Ասաց նրանց, թե «կապյալ Գրիգորին տանելու համար եմ եկել»: Նրանք զարմացած առհասարակ ասացին. «Ո՞վ գիտե՝ ո՞ղջ է, քանզի ահա չատ տարիներ են, որ նրան այնտեղ են գցել»: Իսկ նա պատմեց տեսիլքի դեպքերը և ամեն ինչ, որ եղել էր:*

*218. Եվ եկան բերեցին երկայն ու հաստ պարաններ ու իրար կապելով իջեցրին ներքև: Մեծ ձայնով աղաղակեց Օտա նախարարն ու ասաց. «Գրիգո՛ր, ուր ես, դո՛ւրս եկ, քանզի քո տեր Աստվածը, որին պաշտում էիր, հրամայեց հանել քեզ այդտեղից»: Սա անմիջապես ոտքի կանգնեց, իսկույն չարժեց պարանը ու ամուր բռնեց:*

*219. Իսկ սրանք, իմանալով քաշեցին, վեր հանեցին նրան և տեսան, որ նրա մարմինը թխացել էր, ածուխի նման սևացել: Իսկույն հանդերձներ մատուցելով հագցրին նրան և խնդությամբ Արտաշատ քաղաքից առան գնացին Վաղարշապատ քաղաքը: Այն ժամանակ սարսափելի տագնապալի ցավերից թագավորը դևի կողմից տարվելով՝ ելավ խոզերի երամից ու գնաց նրան ընդառաջ մերկ, խայտառակ [վիճակում]: Իսկ նախարարները քաղաքից դուրս նրանց էին սպասում:*

*220. Երբ հեռվից տեսան նրանց՝ Գրիգորին Օտայի հետ մեկտեղ և այլ բազմաթիվ մարդկանց, որոնք նրանց հետ գալիս էին Արտաշատ քաղաքից, ընդառաջ չարժվելով, մոլեգնելով և իրենց ուտելով դիվահարում էին ու փրփրում նրա առջև:*

*221. Իսկ նա անմիջապես ծունկի գալով աղոթեց, և նրանք իսկույն զգաստացան: Ապա հրամայեց հանդերձներ գցել նրանց վրա, որ ծածկեն իրենց ամոթը: Թագավորն ու նախարարները մոտենալով բռնել էին սուրբ Գրիգորի ոտքերից ու ասում էին. «Խնդրում ենք քեզանից՝ ներիր մեր հանցանքները, որ մենք քո նկատմամբ գործել ենք»:*

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՇՏՈՆԱԿԱՆ ԿՐՈՆ ՀՌՉԱԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*778. Ապա թագավորն իսկույն տիրաբար հրաման տվեց, ամենքի հավանությամբ, գործը երանելի Գրիգորի ձեռքը հանձնելու, որպեսզի նախկին հայրենի, հնամենի և նախնիների ու իր կողմից Աստված անվանված չաստվածներն անհիշատակ դարձնի, մեջտեղից ջնջի: Ապա ինքն իսկ թագավորը, ամբողջ զորքով հանդերձ, Վաղարշապատ քաղաքից չարժվեց գնաց Արտաշատ քաղաքը, ավերելու այնտեղ Անահիտ դիցուհու բագինը և այն, որ Երազամույն կոչված տեղերում էր գտնվում: Նախ ճանապարհին հանդիպեցին քրմական գիտության դպիր, Որմիզդի գրչի Դիվան կոչված, երազացույց, երազահան պաշտամունքի Տիր աստծու ճարտարության ուսման մեհյանը[1] և ամենից առաջ սկսեցին այն քանդել, այրել, ավերել:*

*782. Եվ [Գրիգորը] առհասարակ ամենքի համար աստվածպաշտության խոսքը սերմանեց և բոլորին Տիրոջ ճանապարհի վրա կանգնեցրեց՝ Արարչի պատվիրաններին տեղյակ դարձնելով: Հայաստանի բոլոր քաղաքներում, գյուղերում, ավաններում ու ագարակներում ցույց տվեց եկեղեցու տեղերը:*

*784. Ապա հանձնելով նրանց Աստծու ամենապահ չնորհներին, ինքն առավ թագավորին, չարժվեց գնաց, որպեսզի Հայաստան աշխարհի բոլոր սահմանների վրա, ուրիշ կողմերում ևս կենաց խոսքը սերմանեն: Գնաց հասավ Դարանաղյաց գավառը, որպեսզի այնտեղ ևս կործանեն սուտ աստվածների բագինը, որը Թորդան գյուղում էր, սպիտակափառ Բարշամինա անվանված աստծու մեհյանը: Նախ այն կործանեցին ու նրա արձանը փշրեցին և բոլոր գանձերը, ոսկին ու արծաթը ավարի մատնեցին ու աղքատներին բաշխեցին: Եվ գյուղը բոլոր դաստակերտներով հանդերձ ու սահմաններով՝ եկեղեցուն նվիրեցին և ամենափրկիչ նշանի օրինակն այնտեղ ևս կանգնեցրին:*

*785. Երբ նրանց ևս հաստատեց, գնաց հասավ Անի անվանված*

*ամուր վայրը՝ Հայոց արքաների գերեզմանների թագավորաբնակ կայանը: Այնտեղ կործանեցին բագինը Զևս-Արամազդ աստծու, որը բոլոր աստվածների հայրն էր անվանված: Այնտեղ ևս տերունական [խաչի] նշանը կանգնեցրին, և ավանն իր ամրություններով հանդերձ եկեղեցուն ի ծառայություն նվիրեցին:*

*786. Դարձի եկած զորքերով այնտեղ հասածները, սուրբ Գրիգորը թագավորով հանդերձ, փշրեցին Անահիտ դիցուհու ոսկի արձանը, ամբողջ վայրը քանդեցին, փչացրին, ոսկին ու արծաթը ավարի տվին: Այնտեղից Գայլ գետի վրայով այն կողմ անցան ու քանդեցին Արամազդի դստեր՝ Նանեի մեհյանը Թիլ ավանում: Երկու մեհյանների գանձերն ավարելով՝ Աստծու սուրբ եկեղեցու ծառայությանը նվեր թողեցին տեղերով հանդերձ:*

*790. Եկավ հասավ Արամազդի որդի կոչված Միհրի մեհյանը, այն գյուղում, որը Բագայառիճ են կոչում պարթևերեն, և այն ի հիմանց բրերով քանդեցին, կուտակված գանձերն ավարի մատնեցին ու աղքատներին բաժանեցին և այդ տեղերը եկեղեցուն նվիրեցին, իսկ երկրի բնակիչներին ճշմարիտ գիտության մեջ հաստատեցին...*

*795. Այնժամ թագավորը չուտափույթ և երկյուղածությամբ մեծ խնդությամբ հոգալով՝ հավաքեց երկրների գլխավոր նախարարներին ու կուսակալներին: Առաջինը՝ Անգեղտան իշխանը, երկրորդը՝ Աղձնյաց իշխանը, որը մեծ բդեշխն է, երրորդը՝ մարդպետության իշխանը, չորրորդը՝ ասպետական իշխանության թագադիր իշխանը, հինգերորդը՝ սպարապետության իշխանը, Հայոց աշխարհի զորավարը, վեցերորդը՝ Կորդվաց երկրի իշխանը, յոթերորդը՝ Ծոփաց երկրի իշխանը, ութերորդը՝ Գուգարաց երկրի իշխանը, որն անվանվում էր մյուս բդեշխ, իններորդը՝ Ռշտունյաց երկրի իշխանը, տասներորդը՝ Մոկաց երկրի իշխանը, տասնմեկերորդը՝ Սյունյաց երկրի իշխանը, տասներկուերորդը՝ Ծավդեից երկրի իշխանը, տասներեքերորդը՝ Ուտիացոց երկրի իշխանը, տասնչորսերորդը՝ Զարավանդ և Հեր գավառի չահապ իշխանը, տասնհինգերորդը՝ մաղխազության տան իշխանը, տասնվեցերորդը՝ Արծրունյաց իշխանը:*

*796. Սրանք են Հայաստան աշխարհի, Թորգոմի տան ընտիր իշխանները, կուսակալները, կողմնակալները, հազարապետները, բյուրավորները, որոնց հավաքեց Տրդատ թագավորը և ուղարկեց Կապուտկացոց կողմերը, Կեսարիա քաղաքը, որը հայերեն Մաժաք են կոչում, որպեսզի Գրիգորին, իրենց երկրի քահանայապետ դարձնեն, ու պատրաստվեցին ճանապարհ ընկնելու*[2]*:*

*809. Երբ եկավ հասավ Հայաստանի սահմանները, Գրիգորը լսեց,*

*թե Վահեվանյան մեհյանը մնացել է Տարոնի երկրում՝ մեծագանձ մեհյանը լի ոսկով ու արծաթով և մեծամեծ թագավորների ձոնած բազում նվերներով: Պաշտամունքի ութերորդ հռչակավոր [վայրն] էր Վիշապաքաղն Վահագնի անվամբ, Մեծ Հայքի թագավորների զոհերի տեղը, Քարքե լեռան լանջին, Եփրատ գետի վրա, Տավրոս մեծ լեռան դիմաց, որը և պաշտամունքի վայրերի հաճախաչատ լինելու պատճառով անվանված էր Աշտիշատ: Քանզի այնժամ դեռևս չեն էին նրանում երեք բագինները, առաջինը՝ Վահեվանյան մեհյանը, երկրորդը՝ Ոսկեմայր Ոսկեծին աստվածուհու, և բագինն այս անվամբ էլ կոչված էր Ոսկեհատ Ոսկեմայր դիցուհու, երրորդը՝ Աստղիկ դիցուհու մեհյանը, Սենյակ Վահագնի կոչված, որը հունական ձևով Աֆրոդիտես է: Արդ՝ այնտեղ դիմեց սուրբ Գրիգորը, որպեսզի այն ևս քանդի, քանզի տակավին տգետ մարդիկ չփոթությամբ զոհ էին մատուցում այս մնացած բագիններին:*

*837. Ուր և երանելի Գրիգորը իր ուսուցչությունն ի գործ դրեց և հավաքվածներին ընդունելի դարձնելու համար քաղցրացրեց ու ծովացրեց վարդապետության խորությունը, լիքը լցրեց ամեն հոգևոր բարություններով: Դրանից հետո նա շրջեց, վերահասու եղավ Հայաստան աշխարհի բոլոր կողմերին՝ շինելով եկեղեցիներ բոլոր նահանգներում, գավառներում, կողմերում, քաղաքներում, ավաններում, շեներում, գյուղերում ու ագարակներում: Այդպես էլ թագավորն իր ամբողջ իշխանության մեջ առհասարակ նշանակեց չորսական ծխի հողաբաժին բոլոր ագարակ տեղերում, իսկ ավաններում՝ յոթական ծխի հողաբաժին ի ծառայություն սպասավորության քահանայության, [որպես] նվեր պտղի՝ Տիրոջը մատուցեց:*

*839. Նույնպես [Գրիգորը] համոզեց թագավորին, որպեսզի զանազան գավառներից, կողմերից, այլևայլ տեղերից մանկանց բազմություն հավաքեց ուսուցանելու նպատակով...*

*840. Տրդատ թագավորը Հայոց երկրի տարբեր կողմերին հրաման տվեց՝ իր իշխանության նահանգներից, գավառներից, ուսման համար մատաղ մանուկների բազմություն բերել և նրանց վրա հմուտ ուսուցիչներ կարգել: Առավելապես քրմերի պղծագործ ցեղին և նրանց մանուկներին այնտեղ հավաքել, հարմար տեղերում դաս-դաս խմբել և ապրուստի թոշակ նշանակել: Նրանց երկու մասի բաժանեցին, ոմանց տվեցին ասորի դպրության և ոմանց՝ հելլենականին[3]:*

*842. Այսպես Հայոց ամբողջ երկրում, ծայրից ծայր, ջանաց, սփռեց, տարածեց քարոզության ու ավետարանության գործը՝ Սատաղացիների քաղաքից մինչև Խաղտյաց երկիրը, Կղարջքի մոտ, ընդհուպ*

*մինչև մասքութների սահմանները, մինչև Ալանաց դռները, Կասպից սահմանները և Հայոց Թագավորության Փայտակարան քաղաքը: Ամիդ քաղաքից մինչև Մծբին քաղաքը, անցնելով Ասորիքի սահմանները, Նոր Շիրական երկիրը, Կորդուք գավառը մինչև Մարաց ամուր աշխարհը, մինչև Մահքր-Տան իշխանի երկիրը և Ատրպատական՝ սփռում, տարածում էր իր ավետարանական քարոզը:*

*845. Եվ դարձյալ չեն ու անչեն տեղերում հաստատեց դաշտաբնակ, շենաբնակ, լեռնական, անձավաբնակ, արգելաբնակ վանականների բազում ու անհամար խմբեր: Քրմերի որդիներից ոմանց առավ աշակերտ, ձեռնասուն դարձրեց, ջանում էր ուսում տալ նրանց Հոգևոր խնամքով ու երկյուղով դաստիարակել: Ով որ եպիսկոպոսության աստիճանին արժանի էր, նրան ձեռնադրում էր: Նրանցից առաջինի անունը Աղբիանոս էր, որը հետո Եփրատ գետի կողմերում եպիսկոպոս եղավ, երկրորդինը՝ Եվտաղիոս, որը Բասեն գավառի կողմերում Հոգևոր հովիվ կարգվեց, երրորդինը՝ Բասոս, չորրորդինը՝ Մովսես, հինգերորդինը՝ Եվսեբեոս, վեցերորդինը՝ Հովհաննես, յոթերորդինը՝ Ագապես, ութերորդինը՝ Արտիթես, իններորդինը՝ Արսուկես, տասներորդինը՝ Անտիոքես, տասնմեկերորդինը՝ Տիրիկես, տասներկուերորդինը՝ Կիրակոս: Սրանք էին, որ առանձնացվեցին քրմերի որդիներից՝ տարբեր կողմերի եպիսկոպոսներ լինելու, քարոզություն տարածելու համար: Մյուսների անունները, եթե որևէ մեկը կամենա, չի կարող թվել:*

*1. Դպրության Տիր աստծո պաշտամունքը նախաքրիստոնեական դարաշրջանում ամենախոսուն ապացույցներից է նախամաշտոցյան հայ դպրության մասին, ինչը հիմնավորվում է բազմաթիվ մատենագրական և հնագիտական այլ փաստերով ևս (տե՛ս* ***Ա. Ե. Մովսիսյան,*** *Հայկական մեհենագրություն, Ե., 2003; նույնի՝ «Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը», Ե., 2003 գրքերը):*

*Տիրի և հայոց նախաքրիստոնեական մյուս աստվածների մասին ամփոփ տե՛ս* ***Ղ. Ալիշան,*** *Հին հավատք կամ հեթանոսական կրոնք Հայոց, Վենետիկ, 1895;* ***Г. Вардумян,*** *Дохристянские культы армян, «Հայ ազգագրություն և բանահյուսություն», հ. 18, Ե., 1991:*

*2. Հայոց եկեղեցու ընդունած ավանդական ժամանակագրության համաձայն՝ Հայաստանում քրիստոնեության պետական կրոն հռչակումը տեղի է ունեցել 301, իսկ Գրիգոր Լուսավորչի՝ Կեսարիայում ձեռնադրումը՝ 302 թվականներին: Նշված թվականների մասին գիտության մեջ կան ավանդականից տարբերվող բազմաթիվ տեսակետներ (տե՛ս* ***Ռ. Լ. Մանասերյան,*** *Հայաստանը Արտավազդից մինչև Տրդատ Մեծ, Ե., 1997, էջ 196-201;* ***Բ. Հ. Հարությունյան,*** *Ե՞րբ է քրիստոնեությունը հռչակվել պետական կրոն, «Հանդէս Ամսօրեայ», 2006, № 1-12, էջ 85-200) և այլն:*

*3. Հայաստանում նոր կրոնի քարոզիչները գլխավորապես հույներն էին և ասորիները, քրիստոնեական գրականությունը այդ լեզուներով էր, ուստի, բնական է, որ նոր կրոնի հետ ծանոթանալու համար այդ լեզուներն իմացող հայ թարգմանիչներ էին հարկավոր, այդ նկատի ունենալով է, որ բացվում են դպրոցներ հունարեն և ասորերեն լեզուներով:*

## ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ԵՎ ՀԵԹԱՆՈՍՆԵՐԻ ՄԻՋԵՎ ՏԵՂԻ ՈՒՆԵՑՈՂ ԿՌԻՎՆԵՐՆ ԸՍՏ ԶԵՆՈԲ ԳԼԱԿԻ

***Զենոբ Գլակը, ըստ իր տեղեկության, IV դարի գործիչ է: Եղել է ասորի այն եկեղեցականներից, որոնց Գրիգոր Լուսավորիչը Ասորիքից հրավիրել էր Հայաստան քրիստոնեության տարածմանը նպաստելու համար: Անձամբ մասնակցել է հեթանոսների դեմ մղված պատերազմներին՝ գտնվելով Լուսավորչի ռազմական արշավախմբում: Պատերազմը վերջանալուց հետո նշանակվել է Տարոնի Գլակի վանքի վանահայր և Լուսավորչի հանձնարարությամբ ձեռնամուխ է եղել գրելու Տարոնում տեղի ունեցած պատերազմների պատմությունը: Զենոբի այդ երկը կցված է VII դարի պատմիչ Հովհան Մամիկոնյանի «Պատմութիւն Տարօնոյ» աշխատությանը:***

***Ինչպես Ագաթանգեղոսի, այնպես էլ Զենոբ Գլակի և Հովհան Մամիկոնյանի պատմությունները լի են բանահյուսական տարրերով:***

***Հովհան Մամիկոնյանի «Պատմութիւն Տարօնոյ» երկը, Զենոբ Գլակի բնագրի հետ միասին, հրատարակվել է մի քանի անգամ: Ստորև բերվող հատվածները տրվում են ըստ Վ. Հ. Վարդանյանի աշխարհաբար թարգմանության (Երևան, 1989):***

### *ՀՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ*

### ՏԱՐՈՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ, էջ 36-42

*Ապա այստեղից դուրս գալով [մենք] անցանք[1] մինչև Թորդան, ուր սպասավոր կարգեցինք Սուրտինոս Եփեսացի վարդապետին՝ բոլոր գավառների համար: Այնտեղից էլ դուրս եկանք և ուզում էինք անցնել Կարին ու Հարք գավառները: Բայց իշխաններից ոմանք Սուրբ Գրիգորին հասկացրին, թե Տարոնի գավառում դեռևս կանգուն են երկու բագիններ, որոնք դևերին են պաշտոն մատուցում: Եվ նա էլ դիմեց եկավ, որպեսզի սրանք ևս կործանի: Եկավ Պալունյաց երկրի Կուառս գյուղաքաղաքը՝ Գիսանե ավանը: Բայց այնտեղ գտնվող*

*քրմերից ոմանք անգետ մարդկանցից լսեցին, թե վաղն առավոտյան կործանվելու են մեծ Աստված Գիսանեն ու Դեմետրը[2]. ուստի գիշերով դուրս եկան կռատներից, բոլոր գանձերը լցրին գետնափոր տներում ու իրենք լուր ուղարկեցին Աշտիշատի քրմերին, թե՝ շուտափույթ հավաքեցեք պատերազմելու ընդունակ բոլոր մարդկանց և շտապեցեք առավոտ վաղ հասնել մեզ մոտ, որովհետև մեծն Գիսանեն կռվի է դուրս գալիս ուրացող իշխանների դեմ: Կուառսի զորքերը նույնպես դարանամուտ եղան այգիների ցանկապատերի մոտ, ոմանք էլ անտառներում դարանեցին: Իսկ նա, որ գլխավոր քուրմն էր՝ անունը Արձան[3] և իր Դեմետր որդին՝ վերցնելով Կուառսի քրմական տանից չորս հարյուր հոգի, բարձրացան Կուառսի հանդիպակաց լեռան վրա ու այնտեղ սպասեցին, մինչև մյուս տեղերից օգնական զորքերի ժամանելը: Իսկ Հայոց զորքերը վաղ առավոտյան դուրս եկան և անցան լեռան ստորոտը, ինչպես որ սովոր էին միշտ շրջում էին:*

*Իսկ Սուրբ Գրիգորն իր հետ առնելով Արծրունյաց, Անձևացյաց և Անգեղ տան իշխաններին, փոքրաթիվ զորքով, ընդամենը երեք հարյուր մարդ, երկրորդ [երրորդ] ժամին բարձրացան նույն բլուրն ի վեր, որտեղ որ Արձանն էր թաքնված: Գալիս էին անհոգ և ոչինչ կասկած չունեին:*

*Եվ երբ մոտ էին բարձունքի ելման տեղին, [հանկարծակի] առաջ անցան Արձանն ու Դեմետրը, հնչեցրին պատերազմի փողերը և խիզախորեն հարձակվեցին նրանց վրա: Այս բանը տեսնելով իշխաններն առաջ նետվեցին. երիվարները սկսեցին վրնջալ, և պատերազմը բորբոքվեց:*

*Այստեղ Անգեղ տան իշխանը ձայն տվեց.*

*– Առաջ անցիր, Սյունյաց իշխան և տես, գուցե հյուսիսցիների իշխանի զորքերն են: Իսկ նա առաջ գնաց, բայց չկարողացավ հասկանալ, թե ովքեր են: Ետ դարձավ և ասաց.*

*– Գրիգորին իր ընկերների հետ փախցրու տար մի անվտանգ տեղ, չլինի թե [թշնամիները] բռնեն նրանց, և մենք թագավորի առջև ամոթահար մնանք: Իսկ դու մեկնումեկին ուղարկիր մեր զորքին իմաց տալու, որ ետ դառնան, քանզի մեր դեմը մեծ բանակ է և շատ դրոշներ են փողփողում: Անգեղ տան իշխանը Սուրբ Գրիգորին հանձնեց Մոկաց իշխանին ու ասաց, թե շտապ հասցրու Ողական անառիկ ամրոցը, մինչև տեսնենք, թե ի՞նչ կլինի: Իսկ ինքը երեք մարդ ուղարկեց զորքին իմաց տալու:*

*Մոկաց իշխանն առնելով Սուրբ Գրիգորին՝ ցածրվայր լեռներով ետ դարձավ և ցանկանում էր իջնել Կուառս: Բայց տեղացիներն ուզեցին նրա ճանապարհը փակել. այդ բանը տեսնելով Սուրբ Գրիգորը*

*հասկացավ, որ իրենց լուրջ վտանգ է սպառնում: Նշխարները վայր իջեցրեց գյուղի դիմացը մի աղբյուրի մոտ՝ ձորի այն կողմը, դրեց և հաստատեց [նշանագրեց] այնտեղ: Եվ Տերը թաքցրեց այդ տեղն, ու ոչ ոք չկարողացավ տեսնել, մինչև [հետագայում] Սուրբ Գրիգորը նորից վերադարձավ այնտեղ:*

*Ապա այդ գյուղի բնակիչները հետապնդեցին մեզ, իսկ մենք հեծնելով ձիերը՝ բոլորս փախստական գնացինք մինչև ամուրն Ողական և նրանցից առաջ մտանք ամրոցը, որովհետև ամրոցաբնակները մեզ ընդառաջ ելան և ներս տարան: Բայց գյուղի բնակիչները եկան անցան մյուս կողմն ու պաշարեցին ամրոցը: Մենք ճարահատյալ գիշերը գաղտնի սուրհանդակ ուղարկեցինք Անգեղտան իշխանի մոտ և բացատրեցինք մեր վիճակը և գրով տեղեկացրինք նրան իրերի դրությունը: Նա ընտիր սուսերավորներից չորս հազար զինվոր ուղարկեց Ապահունիքի իշխանի գլխավորությամբ, որոնք շուտափույթ եկան, անցան գետի մյուս կողմը և երեք օրվա ընթացքում գրավեցին քաղաքներն ու շինությունները, ավերեցին, պարիսպները հիմնահատակ կործանեցին: Եվ [գերեվարված] մարդկանց էլ բերին այնտեղ անցկացրին [իրենց մոտ]: Ապա իշխանները բարձրացան բլուրը և տեսան, որ Արձանը ընդամենը չորս հարյուր մարդ ուներ. [սակայն նրանք] հանկարծակի հարձակվեցին քաջարի իշխանների վրա ու նրանց զորքերին փախուստի մատնեցին: Բայց հայոց մնացած զորքերը, երբ լսեցին կռվի բոթը, աճապարեցին բոլորը բլրի գագաթը հասնել: Այնժամ Արձանն առաջ գալով սկսեց անարգել հայոց իշխաններին ու ասաց.*

*– Առաջ եկե՛ք, ով դավանակործան մարդիկ, հայրենի աստվածներին ուրացողներ և թշնամիներ բարեփառ Գիսանեի: Մի՞թե չգիտեք, որ այսօր ձեր դեմ մեծն Գիսանեն է կռվի ելել և մատնելու է ձեզ մեր ձեռքը. կուրությամբ ու մահվամբ է կործանելու ձեզ: Բայց Արծրունյաց իշխանն առաջ գալով պատասխանեց.*

*– Դու, որ խրոխտանում ես մեր դեմ, եթե հանուն չաստվածների ես մարտնչում՝ սուտ ես, եթե հանուն Հայոց երկրի՝ բնավ իսկ անմիտ եք, որովհետև սրանք են, ահա իշխանն Անգեղ տան, և իշխանը Սյունյաց տան և ուրիշները պատվական այրերից, որոնց ինքներդ էլ լավ եք ճանաչում: Իսկ Դեմետրը՝ Արձանի որդին, ասաց.*

*– Լսեցե՛ք մեզ, հայոց իշխաններ, այս քառասուն տարի է ինչ ծառայում ենք մեր մեծ աստվածներին և քաջ գիտենք զորությունը նրանց: Գիտենք, որ իրենց սպասավորների, [պաշտողների] թշնամիների դեմ իրենք են մարտնչում: Այժմ մենք չենք կարող պատերազմով ձեզ ընդդիմանալ, որովհետև սա Տունն է հայոց թագավորի, և դուք*

*էլ արքայի իշխաններն եք: Բայց ահա, այս Թող հայտնի լինի, որ Թեև ձեզ հաղԹել չենք կարող, սակայն գերադասում ենք մեռնել մեծ աստվածների ղոհարանի վրա, քան Թե նրանց ձեր ձեռքով կործանված ու ապականված տեսնել: Դրանով էլ իսկ կյանքը ատեցինք և մահը նախընտրեցինք: Բայց դու, որ իշխանն ես Անգեղ տան, առաջ արի՛, մենամարտենք ես և դու:*

*Այնժամ մեջտեղ եկան Արձանն ու Անգեղ տան իշխանը և միմյանց վրա հարձակվեցին: Արձանը հասցրեց տեգով հարվածել նրա ազդրին և քիչ էր մնում գետին գլորեր: Բայց իշխանը նրա կողմը դառնալով գոչեց. «Իմացի՛ր, Արձան, որ այսօր դու պետք է հենց այստեղ արձանանաս»: Ապա սուրը վեր բարձրացնելով Թափով հարվածեց նրա աջ ուսին և գլուխը պարանոցից անջատեց: Եվ [Արձանը] գլխատված գետին տապալվեց. ապա նրա վրա արձան կիտեցին. այժմ էլ նույն տեղում Թաղված է, ուստի և լեռը մինչև օրս էլ Արձան են կոչում: Եվ մինչ այս բոլորը տեղի ունեցան, Վիչապ քաղաքից փուԹանակի եկան հասան քրմերի զորքերը, և չատ-չատերը Պարեխից ու Մեղտիից՝ բոլորն առհասարակ եկան հասան նրանց օգնուԹյան: Ոմանք էլ Հաչտենքից գալով այնտեղ հասան. ընդամենը ինչպես հետո հենց իրենցից իմացանք, հինգ հազար չորս հարյուր հիսուն հոգի: Իսկ երբ հասան լեռան կատարին, երկու զորքերի միախառնվելու բոԹը մեզ հասավ. ապա քրմաց խմբերը իրար միանալով հարձակվեցին հայոց զորքի վրա, փախուստի մատնեցին նրանց և գյուղի դիմացի ղաուվայրով [նրանց] ներքև վռնդեցին: Իսկ գյուղացիք էլ մեր փախչող զորքի դիմաց ղարանամուտ սպասում էին. և երկու կողմերից հայոց զորքին մեջտեղ առնելով սկսեցին կոտորել: Սակայն Անգեղ տան իշխանը ճեղքելով քրմերի պատնեշը, անցավ նրանց [Թիկունքը]. նա բլրի ղաուվայր կողմում տեսավ հետիոտն մարդկանց, որոնք հսկա վեմերով երիվարներին չատ մեծ վնասներ էին հասցնում: Իսկ Դեմետրը, երբ տեսավ, որ Անգեղ տան իշխանը դեպի բլուրն է բարձրանում, Թողեց մնացած զորքին և նրա ետևից գնաց, մյուս զորքից չատերը նույնպես քառատրոփ այնտեղ հասան: Եվ երբ բարձրացան բլուրը, միմյանց դեմ ղարձյալ ճակատ կազմեցին: Բայց մեր իշխանները կանգնած սպասում էին իրենց զորքերին, որովհետև դեռևս ոչ բոլորն էին հավաքվել:*

*Զորս հազարը Մեղտիում դեռ գերիներին էին հսկում, երեք հազարն անցել էին Բասեն ու Հարք, իսկ մնացածներն էլ դաչտավայրում սփռված դեռևս բազիներ էին փնտրում:*

*Եվ երբ միմյանց դեմ ճակատ կազմեցին և կամենում էին արդեն*

հարձակվել, երեկոն իջավ: Ուստի հենց նույն տեղում էլ բանակ դրին և սպասեցին լույսը բացվելուն: Երբ լուսացավ, եկան հասան Հայոց զորքերը, իսկ Տիրակատար քաղաքից էլ մի խումբ՝ յոթ հարյուր հոգի, եկան քուրմերին օգնության: Ահա, երբ եկան և երկու կողմն էլ գուպար կազմեցին, քրմական զորքը վեց հազար ինը հարյուր քառասունվեց հոգի եղավ[4], իսկ Հայոց իշխաններինը՝ յոթ հազար ութանասուն հոգի: Այնժամ հնչեցին պատերազմի փողերը և բոլոր կողմերից միմյանց վրա հարձակվեցին: Սկզբում Հայոց զորքը հաղթում էր քրմերին: Բայց Հաշտենքի իշխանը, որ Հայոց իշխանների հետ էր, իր յոթ հարյուր զինվորներով անջատվեց ու անցավ քուրմերի կողմը և սկսեց կռվել Հայ իշխանների դեմ: Այդ բանը տեսնելով Հայոց զորքերը հուսալքվեցին, որովհետև նա այնքան ուժեղ, կորովի և քաջ պատերազմող էր, որ բոլոր Հայ իշխանները դողում էին նրանից: Եվ անխնա սկսեց կոտորել ու արյուն հեղել, մինչև որ ամբողջ զորքը թախանձագին աղաղակներով Սյունյաց իշխանին դիմեց: Իսկ սա (Սյունյաց իշխանը) ձայն տալով գոչեց.

– Այ գայլակորյուն, հորդ բարքե՞րը [դարձյալ] հիշեցիր և նույն չաղախակերությանը վերադարձար: Իսկ նա պատասխանեց.

– Այ արծվաձագ, դու որ թևերիդ [զորությամբ] ես հպարտանում, երբ ակնատիս լարերի մեջ կընկնես, ես իմ զորությունը այն ժամանակ ցույց կտամ քեզ: Բայց Սյունյաց իշխանը չերերաց թշնամու հանդեպ, այլ հարձակվելով նրա վրա՝ մուրճով հարվածեց նրա սաղավարտին, ապա զորքից անջատելով փախցրեց նրան դեպի արևելյան կողմի լեռը, այստեղից էլ քշեց [նրան] դեպի Իննակնյան վայրը, հասնելով՝ ցած գլորեց երիվարից, իջավ կտրեց գլուխը և մարմինը գահավեժ անելով գոչեց. – Թող տեսնեն անգղները մարմինդ և իմանան, որ արծիվն է հոշոտել այդ նապաստակին. ու ինքը ետ վերադարձավ: Ուստի և այդ տեղն էլ մինչև այսօր Արծվիք է կոչվում:

Իսկ Արծրունյաց իշխանը կռվի նետվելով՝ անջատեց [յուրայիններից] Աշտիշատի Մեստակես անունով քրմապետին, հետապնդեց մինչև անտառի ծայրին գտնվող բացատը: Երբ հասավ նրան, Մեստակեսը կարողացավ խոցել նրա ազդրը. ավելի բորբոքվեց իշխանը, եռաց նրա մեջ արյունը. վրա հասավ, կտրեց քրմապետի գլուխը և պարանոցի հետ միասին վայր նետեց, իսկ դիակը ձորից ցած գլորեց, որի համար էլ այդ տեղը Մեստակող են կոչում: Իսկ Արջուց իշխանը փախչելով թաքնվեց նույն վայրում: Արծրունյաց իշխանը տեսավ նրան, բայց չտեսնելու տվեց. ապա գնաց մոտեցավ ու հանկարծակի հարձակվեց նրա վրա: Սա ուզեց փախչել դեպի անտառը, բայց վայր

*ընկավ և ջարդված մի փայտի կտոր մտավ սիրտն ու այնտեղ մեռավ: [Արծրունյաց] իշխանն էլ երկու նժույգներն առնելով ետ դարձավ. այդ տեղն էլ Արջուց ձոր անվանվեց: Եվ երբ ետ դարձավ կռվի վայրը, տեսավ, որ Անգեղ տան իշխանն ու Դեմետրը մենամարտում են միմյանց դեմ: [Իշխանը Դեմետրի] վրա հարձակվելով պատռեց նրա աջ ուսն ու նրան վայր գցեց, ապա կտրեց նրա գլուխն ու գցեց իր մաղախը: Այնուհետև ընկան զորքի մեջ ու անխնա սկսեցին կոտորել՝ հազար երեսուն մարդ անշունչ փռեցին: Բայց նույն կռվում Դեմետրը սպանել էր Մոկաց իշխանի որդուն, և այդ բանը մեծ վիշտ պատճառեց իշխաններին:*

*Արդ, երբ պատերազմում Դեմետրը ընկավ, Սյունյաց իշխանը հնչեցրեց խաղաղության փողը և երկու կողմերից դադարեցրին կոտորածը: Այստեղի բնակիչները, երբ տեսան, որ սպանվածները քրմերն էին, խնդրեցին իրենց իշխաններից դադարեցնել պատերազմը, որպեսզի թաղեն իրենց մեռելներին: Եվ նրանք թույլ տվեցին: Ապա երկու կողմերից սկսեցին հավաքել իրենց մահացածներին. դրանք այնքան շատ էին, որ գերեզմանի տեղ չմնաց, ուստի լցրին բոլորին մի փոսի մեջ, հուշարձան կանգնեցրին նրանց վրա ու գրեցին հետևյալը.*

**– Տեղի ունեցավ առաջին պատերազմը. այստեղ է հանգչում հույժ քաջամարտիկ Արձան քրմապետը, նրա հետ նաև հազար երեսունութ հոգի, որոնք կռվեցին հանուն Գիսանե կուռքերի և հանուն Քրիստոսի:**

*1. Պատմում է Զենոբ Գլակը:*

*2. Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այս բնագրի Գիսանեն համապատասխանում է Վահագնին, իսկ Դեմետրեն՝ Աստղիկ-Անահիտին (տե՛ս* **Գր. Խալաթյանց,** *Զենոբ Գլակ. համեմատական ուսումնասիրություն, Վիեննա, 1893, էջ 20-27, 54-60;* **Ս. Հմայակյան,** *Կուռա-Կուառ աստվածության պաշտամունքը Հայկական լեռնաշխարհում, «Պատմա-բանասիրական հանդես», 1990, № 1, էջ 154-160):*

*3. Հայոց վերջին Արձան քրմապետի անունը համապատասխանում է Ք. ա. VIII դարում հիշատակվող Արդինի-Մուսասիրի (Խալդիի պաշտամունքի գլխավոր կենտրոնի) քրմապետ-արքա Ուրզանայի անվանը (ա-ու հնչյունափոխությունը տարածված էր սեպագրերում, օր.՝ Արբելա-Ուրբիլու, Արմե-Ուրմե, Արարատ-Ուրարատ-Ուրարտու): Տասներկու դարերի հեռավորությամբ քրմապետի անվան (կամ, գուցե, տիտղոսի) կրկնությունը ցույց է տալիս հոգևոր-ժառանգական կապը Վանի թագավորության և Արշակունյաց դարաշրջանների միջև:*

*4. Հայ հեթանոսական վերջին քրմերը, ինչպես երևում է Զենոբ Գլակի տեղեկությունից, մեծ քանակությամբ հետևորդներ են ունեցել և ճակատ առ ճակատ կռվել են Տրդատի և Գրիգոր Լուսավորչի գլխավորած պետական զորաբանակի դեմ:*

## ՊԱՏԵՐԱԶՄԸ ՔՐԻՍՏՈՆՅԱ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԵԹԱՆՈՍ ՀՌՈՄԻ ՄԻՋԵՎ ԸՍՏ ԵՎՍԵԲԵՈՍ ԿԵՍԱՐԱՑՈՒ

***Եվսեբեոս Կեսարացին (IV դ.) վաղ քրիստոնեական եկեղեցական աչքի ընկնող գործիչներից է, գրել է «Եկեղեցական պատմություն» վերնագրով աշխատություն, որը հայերեն է թարգմանվել հինգերորդ դարում: Հրատարակվել է 1875 թ. Վենետիկում՝ «Պատմութիւն եկեղեցւոյ» խորագրով: Քրեստոմատիայում բերված հատվածը տրվում է ըստ այս հրատարակության (աշխարհաբար թարգմանությունը Ա. Գ. Աբրահամյանի):***

### ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Գիրք IX*


***Մաքսիմինոս Դայա***

*Գլ. 8. Բռնակալ Մաքսիմինոս Դայան[1] պատերազմ հայտարարեց արմեններին, այն մարդկանց, որոնք ի սկզբանե բարեկամ և նիզակակից էին հռոմեացիներին: Եվ որովհետև նրանք քրիստոնյա էին և ջերմեռանդ պաշտում էին Աստծուն, ուստի աստվածատյացը ջանաց նրանց բռնությամբ ստիպել, որ դառնան կուռքերի և դևերի պաշտամունքին: Դրանով նա բարեկամին ատելի դարձրեց, դաշնակցին՝ թշնամի... Արդ՝ նա հենց ինքն իր բանակի հետ, արմենների դեմ պատերազմելիս, ջախջախվեց[2]:*

*1. Հռոմեական կայսր Մաքսիմինոս Դայան գահակալն է 305-313 թվականներին:*

*2. Եվսեբեոս Կեսարացու այս տեղեկությունից հետևում է, որ քրիստոնեությունը Հայաստանում պաշտոնապես ավելի վաղ է ընդունվել, քան Հռոմում:*

## ԵԹՈՎՊԱԿԱՆ ԲՆԱԳԻՐԸ ՀԱՅՈՑ ՏՐԴԱՏ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ

***Տրդատ III Մեծի մասին մեզ է հասել եթովպական մի բնագիր, որը պատմում է նրա գահ բարձրանալու և գործերի մասին: Գրառված ավանդազրույցը նպատակ ունի բացատրելու հայոց և հռոմեական***

*եկեղեցիների բաժանման պատճառը՝ այն կապելով Հռոմեացիների նենգության հետ (դա բնական է, քանի որ եթովպական և հայոց եկեղեցիները միաբնակ էին, մինչդեռ արևմտյան եկեղեցիներն ընդունել էին երկբնակություն)։*

**I. Geschichte des armen. Königs Tertâg.**

(Nach dem aethiop. Mscr. der Kgl. Bibliothek zu Berlin. Petermann'sche S. Nachtrag 38. p. 83ª ff.)

በስመ ፡ አብ ፡ ወወልድ ፡ ወመንፈስ ፡ ቅዱስ ፡ ፩ አምላክ ። ንወጥን ፡ በረድኤተ ፡ እግዚአብሔር ፡ ወንጽሕፍ ፡ ዜና ፡ ሰርኪስ ፡ ዘአርማንያ ፡ ወዜና ፡ ቅዱስ ፡ ትርታግ ፡ ንጉሠ ፡ አርማንያ ፡ ወዜና ፡ ንጉሠ ፡ ሮም ፡ ወምክንያተ ፡ ተፈልጦቶሙ ፡ ለአርማን ፡ እምሮም ፡ እምሃይማኖቶሙ ፡ በሰላመ ፡ እግዚአብሔር ፡ አብ ፡ አሜን ። ።

ስምዑኬ ፡ አኃውየ ፡ ወአበውየ ። ወዝንቱሰ ፡ ትርታግ ፡ ኮነት ፡ ሀገሩ ፡ ተውሪዝ ፡ እንተ ፡ ይእቲ ፡ ሀገረ ፡ አርማንያ ፡ ወወልደ ፡ ንጉሣ ፡ ውእቱ ። ወበአሐቲ ፡ እመዋዕል ፡ መጽኡ ፡ ፀር ፡ ኀበ ፡ ንጉሠ ፡ አርማንያ ። ዝውእቱ ፡ ትርታግ ፡ ወተጻብአ ፡ ምስሌሆሙ ፡ ወተመውአ ። ወትርታግሰ ፡ ኮነ ፡ ንኡሰ ፡ ነሥአቶ ፡ ሐፃኒቱ ፡ ወጐየት ፡ ወወሰደቶ ፡ ሀገረ ፡ ሮም ። ወነበረ ፡ ህየ ፡ ወልህቀ ። ወሶበ ፡ ልህቀ ፡ ሖረ ፡ ወቦአ ፡ ቤተ ፡ መኰንን ፡ ፩ ወነበረ ፡ እንዘ ፡ ይትለአኮ ፡ ምስሌሆ ፡ ወዝንቱ ፡ ወልድ ፡ ኮነ ፡ ኀያለ ። ወሶበ ፡ ርእየ ፡ እግዚኡ ፡ ኀይሎ ፡ ወጽንዖ ፡ አፍቀሮ ፡ ፈድፋደ ። ወእምድኅረ ፡ ኅዳጥ ፡ መዋዕል ፡ መጽአ ፡ ንጉሠ ፡ በርበር ፡ ከመ ፡ ይጻብእ ፡ ምስለ ፡ ንጉሠ ፡ ሮም ። ወሶበ ፡ ሰምዐ ፡ ንጉሠ ፡ ሮም ፡ አስተጋብአ ፡ ሰራዊቶ ፡ ወመኳንንቶ ፡ ወእግዚአ ፡ ትርታግሂ ፡ መጽአ ፡ ምስሌሆሙ ፡ ወመጽኡ ፡ ከመ ፡ ይጻብኡ ። ወሶበ ፡ ተራከቡ ፡ ክልኤ ፡ ሰራዊት ፡ ተናጸሩ ፡ በበይናቲሆሙ ፡ ለአከ ፡ ንጉሠ ፡ በርባር ፡ ኀበ ፡ ንጉሠ ፡ ሮም ፡ እንዘ ፡ ይብል ፡ በእንተ ፡ ፡ ምንትኑ ፡ ይትከዐው ፡ ደመ ፡ ሰራዊት ፡ በእንቲአነ ። ወባሕቱ ፡ ነዓ ፡ [አነ ፡ ወ] ፡ አንተ ፡ ንጻባእ ፡ በበይናቲነ ፡ በባሕቲትነ ፡ እመሰ ፡ ሞእከኒ ፡ ንሣእ ፡ ሰራዊትየ ፡ ወሀገርየ ፡ ወአንሂ ፡ እመ ፡ ሞእኩከ ፡ እነሥ

*Եթովպական բնագրի առաջին էջը*

***Բնագրի ստեղծման ժամանակը ստույգ հայտնի չէ։ Դատելով բովանդակությունից՝ այն պետք է ստեղծված լինի VI դարից հետո, քանի որ հայոց եկեղեցին քաղկեդոնականության դեմ իր վճռական հակադրությունը հայտնել էր 506 և 554 թվականներին Դվինում կայացած եկեղեցական ժողովներում։***

***Բնագիրն ունի ընդգծված բանահյուսական գունավորում։ Դրանով հանդերձ այն պարունակում է պատմական հետաքրքիր տվյալներ։***

***Բնագիրը եթովպերենից թարգմանել է գերմանացի հայտնի արևելագետ Յոհաննես Բախմանը (J. Bachmann, Die Philosophie des Neopythagoreers Secundus. Linguistisch-philosophische Studie, Berlin, 1888, էջ 52-55, հավելված II, էջ 1-8): Գերմաներենից հայերեն է թարգմանել Համիկ Մելքոնյանը (ծանոթագրությունները՝ Ա. Ե. Մովսիսյանի):***

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ ԱՐՔԱ ՏՐԴԱՏԻ (ԹԵՐԹԱԳ) ՄԱՍԻՆ

*Հանուն Հոր և Որդու և Սուրբ Հոգու՝ միակ Աստծո:*

*Տիրոջ օգնությամբ սկսում ենք գրել Հայաստանցի Սարգիսի և Ս. Տրդատի՝ հայոց արքայի, ինչպես նաև հռոմեական կայսրի պատմությունը, և [դրանով] նշում հայերի հավատքը հռոմեացիներից բաժանող պատճառները՝ կամոքն Աստծո, մեր Հոր. Ամեն:*

*Եվ այսպես, լսեցե՛ք, սիրելի եղբայրներ և հայրեր:*

*Այս Տրդատի հայրենիքը Տևրիզն[1] էր, որը Հայաստանն է: Նա այդ երկրի արքայազն էր: Մի [գեղեցիկ] օր թշնամիները ճակատամարտ սկսեցին հայ թագավորի դեմ: Այդ Տրդատն էր[2]: Նա նրանց դեմ ճակատամարտեց և պարտվեց: Տրդատը դեռ շատ երիտասարդ էր: Տրդատի մայրը նրան փախցրեց և Հռոմ բերեց: Այնտեղ նա մնաց և մեծացավ: Երբ նա արդեն չափահաս էր, մի մեծամեծի տանը զինվորական ծառայություն մատուցեց[3]:*

*Այս պատանին [արտասովոր] ուժեղ էր, և երբ տերը համոզվեց նրա ուժի և կարողության մեջ, շատ սիրեց նրան: Քիչ ժամանակ անց եկավ բարբարոսների թագավորը, որպեսզի հռոմեական կայսեր հետ պատերազմի[4]: Երբ հռոմեական կայսրն այդ լսեց, հավաքեց իր զորքն ու հրամանատարներին: Եվ նաև Տրդատի տերը ճանապարհ ընկավ ճակատամարտի: Եվ երբ երկու բանակները իրար էին բախվելու և ճակատամարտի պատրաստ իրար ընդառաջ կանգնած էին, բարբարոսների թագավորը սուրհանդակ ուղարկեց հռոմեական կայսեր մոտ և հաղորդեց նրան. «Ինչո՞ւ պետք է մեր պատճառով մեր զորքերի արյունը թափվի: Պետք չէ այսպես: Լավ կլինի՝ մենք մենամարտենք և մեր ուժերը չափենք: Եթե դու հաղթող դուրս գաս, ապա վերցրու իմ զինվորներին ու իմ երկիրը: Բայց եթե ես քեզ հաղթեմ, ես կվերցնեմ քո զինվորներին և քո երկիրը»:*

*Երբ հռոմեական կայսրն այդ լսեց, զարհուրելի սարսափը պատեց նրան, քանի որ նա այդքան ուժեղ չէր, ինչպես այն մեկը: Այդ պատճառով նա կանչեց իր հրամանատարներին և ասաց նրանց. «Ո՞վ է այն մարդը, որ կարող է մենամարտել բարբարոսների թագավորի*

*հետ»: Նրանք պատասխանեցին. «Մեր մեջ չկա մեկը, որ ի վիճակի լինի մենամարտել նրա հետ, քանի որ նա շատ ուժեղ է և գարշելի»: Միայն հրամանատարներից մեկը՝ Տրդատի տերը, ասաց կայսրին. «Ինձ մոտ անսահման ուժեղ մի երիտասարդ դյուցազն է ծառայում. նա հաստատ ի վիճակի կլինի մենամարտել թագավորի հետ»: Կայսրը պատասխանեց նրան. «Բե՛ր նրան ինձ մոտ»:*

*Եվ խկույն հրամանատարը կանչեց Տրդատին կայսեր մոտ: [Վերջինս] այսպես ասաց նրան. «Դու կկարողանա՞ս մենամարտել բարբարոսների թագավորի հետ»: «Անշուշտ»,- պատասխանեց նա,- «ես դա կարող եմ անել, բայց ինձ տո՛ւր քո նժույգը, սուրն ու համազգեստը, այն, ինչը որ կայսրին ճանաչելի է դարձնում»: Կայսրն ասաց նրան: «Եթե դու բարբարոսների թագավորին մենամարտում հաղթես, քեզ կնուսթյան կտամ իմ դստերը և մեծամեծ պարգևներով կմեծարեմ քեզ. Այո՛, իմ թագավորության կեսն անգամ քեզ կնվիրեմ»: Այս ասելուց հետո նրան հանձնեց թագավորական նժույգը, սուրն ու համազգեստը: Նա հեծեց նժույգը, ճանապարհ ընկավ և ձիավարեց բարբարոսների թագավորին ընդառաջ: Վերջինս նույնպես, աչքերը հառած նրան, ձիավարեց ընդառաջ:*

*Եվ երբ երկրորդ անգամ Տրդատը նրան մոտեցավ, խորամանկորեն ասաց. «Ինչո՞ւ ես զինվորներիդ հետդ բերել: Արդյո՞ք մենք մենամարտով չպետք է մեր ուժերը չափենք»: Հազիվ էր բարբարոսների թագավորը այդ լսել, շուռ եկավ, որպեսզի տեսնի, թե իսկապես իր զորքերը հետևել են իրեն: Հենց այդ պահին, երբ թագավորը մեջքով դեպի Տրդատն էր, նա հանեց իր սուրը, գլխատեց թագավորին և գլուխը բերեց հռոմեական կայսրին:*

*Այնուհետև հռոմեական կայսրը հետապնդեց բարբարոսների բանակին, ջախջախեց նրանց՝ առանց մեկին կենդանի թողնելու: Եվ նրանք մեծ ուրախությամբ և ցնծությամբ վերադարձան իրենց երկիրը: Նա [հռոմեական կայսրը] ասաց Տրդատին. «Ցանկացիր ինչ-որ ուզում ես, ես կկատարեմ քո բոլոր ցանկությունները, իմ թագավորության կեսն անգամ չեմ մերժի»: Տրդատը պատասխանեց կայսրին և ասաց. «Տու՛ր ինձ զինվորներ, որպեսզի կարողանամ իմ հոր թագավորությունը նորից վերականգնել: Ես Տևրիզի, որ Հայաստանն է, արքայի որդին եմ»: Նա պատասխանեց. «Վերցրո՛ւ այնքան զինվոր, որքան որ սիրտդ ուզում է»: Եվ կայսրը տվեց նրան 50.000 ձիավոր և ասաց. «Այս պահից սկսած՝ մենք երկուսս մեկ ենք: Եթե թշնամիները հարձակվեն քեզ վրա, ես կօգնեմ քեզ», և նա [Տրդատը] գնաց զինվորների հետ:*

*Եվ երբ նա Հայաստան հասավ, տապալեց Թագավորին, որն իր հորը սպանել և Տևրիզի՝ իր հոր, Թագավորության գահին էր տիրացել: Հայերը հնազանդվեցին նրան և խոնարհվեցին նրա մեծության առաջ: Եվ նա ուներ 40 առնական և ուժեղ հերոսներ: Նրանցից մեկը Սարգիսն[5] էր, որն ամենից ուժեղն էր:*

*Շատ ժամանակ անցավ, բարբարոսների Թագավորը պատերազմ սկսեց հռոմեական կայսեր դեմ և իր հետ բերեց այնքան զինվոր, որքան ծովն ունի ավազ: Երբ հռոմեական կայսրը այդ մասին լսեց, սարսափելի վախեցավ և իր սարսափի մեջ ճակատամարտի ուղարկեց իր այն բոլոր զինվորներին, որ հավաքվել էր պատերազմի համար: Բացի այդ, նա սուրհանդակ ուղարկեց հայոց Թագավորի՝ Տրդատի՝ իր բարեկամի մոտ և հաղորդեց նրան հետևյալը. «Իմ սիրելի որդյա՛կ, բարբարոսների Թագավորը, և նրա հետ անսահման զինվորներ, իմ դեմ դաժան դիմադրություն են սկսել: Օգնի՛ր ինձ, սիրելի որդյա՛կս, և ուղարկիր զինվորներ»:*

*Այդ առիԹով նա [Տրդատն] իր մոտ կանչեց 40 զորեղ զինվորներին, այդ Թվում նաև Սարգիսին և ասաց նրանց. «Լսե՛ք, քանի որ մի Թագավոր դաժան պատերազմ է սկսել իմ հոր՝ հռոմեական կայսեր դեմ, պետք է օգնենք նրան, որովհետև նա է, որ ինձ օգնել է իմ երկրում գահին տիրանալ: Երդվե՛ք խաչի և Ավետարանի վրա, որ դուք չեք վերադառնա, քանի դեռ Թշնամու գլուխը, որը համարձակվել է իմ հոր՝ հռոմեական կայսեր դեմ գալ, չբերեք»:*

*Եվ ահա տեղեկացրին կայսրին. «Հայոց Տրդատ Թագավորի կողմից ուղարկված 40 աժդահա տղամարդիկ ժամանեցին: Նա [Տրդատն] ուղարկել է նրանց, որպեսզի քեզ օժանդակեն»: Երբ կայսրն այդ լսեց, անհապաղ իր մոտ կանչեց նրանց և ասաց. «Դուք միայն 40 հոգով եք եկել, և ես կարծում էի, որ նա [Տրդատը] 50.000 և ավելի զինվոր կուղարկի, ի՞նչ եք ուզում: Դուք եկել եք այստեղ, իսկ ես ձեր կարիքը չունեմ: Ես չեմ ուզում ձեզ այստեղ երկար տեսնել, վերադարձե՛ք ձեր տիրոջ մոտ»: Նրանք պատասխանեցին կայսրին. «Տե՛ր, մենք ի վիճակի ենք Թշնամուն, որը քո դեմ դուրս է եկել, սպանել, և, եԹե մենք նրա գլուխը չբերենք քեզ, սպանի՛ր մեզ»: Կայսրը, սակայն, նրանց չընդունեց, այլ դուրս ուղարկեց և հեռացրեց իրենից: Երբ նրանք դուրս եկան, խոսեցին իրար մեջ. «Ի՞նչ անենք հիմա: ԵԹե մենք մեր երկիրը վերադառնանք, մեր Թագավորը մեզ կսպանի, ինչպես ինքն անձամբ մեզ այդ մասին տեղեկացրեց: Բայց մենք ուզում ենք Աստծո օգնուԹյամբ կռվել այն Թշնամու դեմ, որը հռոմեական կայսեր դեմ է դուրս եկել»:*

*40 հերոսները ճանապարհ ընկան բարբարոսների թագավորի մոտ և երդվեցին միմյանց, որ մահն ու կյանքը իրենց չպիտի բաժանի իրարից: Նրանք հանդիպեցին բարաբրոսների թագավորի բանակին: Եվ երբ նրանք բարբարոսներին տեսանելի դարձան, վերջինները կանգնեցրին նրանց և ասացին. «Այս մի քանիսը մեր դեմ պատերազմելու են եկել, թե՞ մեզ հետ մեր երկրում ապրելու»: Եկան և հաղորդեցին այս մասին թագավորին: Դյուցազները, սակայն, հետապնդեցին բարբարոսների զինվորներին և նրանցից չատերին կոտորեցին: Եվ ահա ասացին նրան [բարբարոսների թագավորին]. «Տե՛ս, այն մարդիկ, որոնց մասին քեզ պատմեցինք, մեր ճամբարում բազմաթիվ զինվորների են սպանել»:*

*Այդ բանից հետո նա [բարբարոսների թագավորը] նրանց դեմ 1000 հեծյալ ուղարկեց և նրանք [հերոսները] սպանեցին նրանց: Թագավորին հայտնեցին, որ զինվորներին, որոնց ինքն ուղարկել էր, նրանք սպանել են: Նա դարձյալ նրանց դեմ հեծյալ զինվորներ ուղարկեց, բայց նրանք նրանց ևս սպանեցին և ոչ մեկին կենդանի չթողեցին: Երբ թագավորը լսեց այդ, զարմանքից քար կտրեց և դարձյալ նրանց դեմ 10.000 ասպետ ուղարկեց, սակայն նրանք նաև սրանց սպանեցին և ոչ մեկին կենդանի չթողեցին: Այսպիսով թագավորն անձամբ գնաց իր՝ դեռ կենդանի մնացած զինվորների հետ և ճակատամարտեց 40 դյուցազունների դեմ, բայց այդ մարդիկ չափազանց ուժեղ էին, և ոչ մեկը չկարողացավ նրանց դեմ կանգնած մնալ: Նրանց կռիվը նման էր դաշտում վառվող կրակի, որն ամբողջությամբ այրում է խոտը: Նրանք սպանեցին թագավորին, իր հրամանատարներին և բոլոր զինվորներին:*

*Դրանից հետո վերցրեցին թագավորի և նրա հրամանատարների գլուխները, բերեցին հռոմեական կայսեր մոտ և ներկայացան նրան իր արքունիքում: Եվ նրանք ասացին նրա մեծամեծներին. «Ցույց տվե՛ք սրանք մեր կայսրին: Տեսե՛ք, մենք բերել ենք բարբարոսների թագավորի և նրա հրամանատարների գլուխները»: Երբ այդ մասին տեղեկացրին, նրանք [հերոսները] ներս մտան և պատմեցին նրան այն ամենի մասին, ինչ իրենք կատարել էին: Եվ նա (կայսրը) չատ զարմացավ և, չնայած որ իրեն ցույց էր տրվել թագավորի և 39 հրամանատարների գլուխները, չցանկացավ հավատալ: Եվ նրանք ասացին. «Եթե դու մեր ասածին չես հավատում, ապա մարդիկ ուղարկիր այնտեղ, որպեսզի նրանք սպանված բարբարոս զինվորներին տեսնեն, ինչպես նաև նժույգներին, ջորիներին ու այնտեղ առատորեն լցված զգեստներին և այնտեղ չկար մեկը, որից մենք կկարողանայինք այդ ամենը վերցնել»: Կայսրը զինվորներ ուղարկեց, որպեսզի*

*նրանք տեսնեն, արդյո՞ք հաղորդած լուրը ճիշտ է: Նրանք գտան բարբարոսների դիակները միմյանց վրա լցված, ասես մի բարձր լեռ, և նաև նժույգներն ու զենքերը՝ թափված գետնին: Ոչ մեկը չկար, որ հսկեր նրանց: Նրանք վերադարձան և պատմեցին կայսրին այն ամենի մասին, ինչ որ տեսել էին: Երբ կայսրն այդ լսեց, զարմանքից քար կտրեց: Այնուհետև կայսրը խորհրդակցեց իր մեծամեծների հետ և ասաց. «Եթե նրանք բարբարոսներին կոտորեցին, ի՞նչ կարող ենք մենք անել նրանց դեմ: Եթե մենք իրենց տիրոջ հետ պատերազմենք, ապա նրանք կսպանեն մեզ և մեր երկրի մեջ խռովություն կգցեն: Այդ պատճառով խորհրդակցեք միմյանց հետ, դուք մեծամեծներ, և ասացե՛ք, ինչպես վարվենք այս մարդկանց հետ: Ես ուզում եմ նրանց իմ արքունիք հրավիրել և ճաշկերույթ կազմակերպել նրանց պատվին, որից հետո կասեմ նրանց՝ «Երեք օր նվիրե՛ք ինձ»: Եվ երբ երեք օրն անցնի, կվերցնեք նրանցից յուրաքանչյուրին առանձին ձեր տներն ու կսպանեք նրանց»: Կայսրը նրանց պատվին երեք օր չարունակ ճաշկերույթ տվեց, նրանց փայլուն զգեստներ հագցրեց և մեծարեց նրանց: Երեք օր հետո մեծամեծները վերցրեցին նրանց իրենց տները, ինչպես կայսրն էր որոշել, և սպանեցին նրանց: Եվ ոչ մեկը կենդանի չմնաց, բացի Սարգսից:*

*Այնտեղ մի երիտասարդ աղջիկ կար, որը հայերեն գիտեր, նա եկավ, կանգնեց դռան մոտ և ասաց նրան [Սարգսին]. «Ես սգում եմ քո և քո երիտասարդ գեղեցկության համար: Նայի՛ր, ես մեկ ժամ է քեզ մնացել, որից հետո քեզ կսպանեն, նրանք սպանել են նաև քո ընկերներին»: Այդ բանից հետո նա [Սարգիսը] հոժարակամ կերավ և խմեց: Եվ նա ասաց այդ աղջկան. «Կարո՞ղ ես բերել իմ նժույգն ու զենքերը, ապա արա՛ այդ»: Նա պատասխանեց. «Այո՛, ես դա կարող եմ անել»: Նա բերեց նրան իր նժույգն ու պատրաստ կանգնեցրեց դռան առաջ: Սարգիսը հագավ իր հագուստը, վերցրեց զենքը, դուրս գնաց և հեծնեց իր նժույգը: Նրանք ասացին նրան. «Ո՞ւր ես ճանապարհորդում»: «Կերածս ու խմածս»,- պատասխանեց նա,- «ծանրացել են ստամոքսումս: Այդ պատճառով ուզում եմ ձիով զբոսնել և վերադառնալ»:*

*Սարգիսը, սակայն, հեռացավ քաղաքից և ձիավարեց իր նժույգն այս ու այն կողմ: Ապա բռնեց իր հայրենիքի ճանապարհը, ձիավարեց ամբողջ ուժով դեպի իր հայրենիք: Հենց որ հռոմեացիներն այդ նկատեցին, իրենց նժույգներով հետևեցին իրեն, բայց նա միայնակ հետ դարձավ, սպանեց նրանց, և նրանք չկարողացան հասնել իրեն: Նա շատ զինվորներ սպանեց և վերադարձավ իր երկիրը:*

*Հայոց թագավորին պատմեցին և ասացին նրան. «Սարգիսը վե-*

*բաղարձել է Հռոմից և ընդունելություն է խնդրում մեր թագավո-րից»: Թագավորն ասաց նրանց. «Ասացե՛ք Սարգիսին՝ ես երդվել եմ. դու չպետք է իմ աչքին երևաս, մինչև չբերես թշնամու գլուխը»: Նա ասաց. «Ես սպանել եմ թշնամուն և ինձ հետ բերել եմ նրա գլուխը»: Երբ թագավորն այդ լսեց, հրահանգեց ներս թողնել Սարգիսին, և նա սկզբից մինչև վերջ պատմեց այն ամենի մասին, ինչ պատահել էր իրենց:*

*Տրդատ թագավորը շատ տխրեց, նա դառնորեն լաց եղավ և ասաց. «Վա՜յ ինձ: Տեսե՛ք, իմ հերոսները և իմ երկրի սյուները, իմ զենքերը անհիմն սպանվեցին թշնամու կողմից: Ո՞վ պետք է հիմա վրեժ լուծի հռոմեական կայսրից, այդ ստորից»: Սարգիսը պատաս-խանեց նրան. «Ես եմ ցանկանում վրեժ լուծել, եթե դու այդ կամե-նաս»: Եվ Սարգիսը հավաքեց Հայաստանի ամբողջ բանակը, ճանա-պարհվեց դեպի Հռոմ, հասավ այնտեղ և մունետիկի միջոցով հրա-հանգեց. «Յուրաքանչյուր գերի ընկած հռոմեացու բերե՛ք ինձ մոտ, որպեսզի ես իմ ձեռքով սպանեմ նրան»: Սարգիսն այդ ասաց ամբողջ լրջությամբ, ապա նա հարձակվեց Հռոմի վրա և սպանեց հռոմեական կայսրի զինվորներին: Եվ երբ նա կայսեր գտնվելու վայրին մոտեցավ, կայսրը դուրս եկավ նրա դեմ կռվելու, և նրանք մենամարտեցին իրար հետ: Նա սակայն սպանեց կայսրին ու նրա բոլոր զինվորներին և անսահման ուրախությամբ ու ցնծությամբ վերադարձավ հայրենիք:*

*Այս Սարգիսը, սակայն, ամեն անգամ, երբ քնել էր ուզում, երա-զում արյան ծով էր տեսնում, արթնանում խռովության մեջ և այլևս չէր կարողանում քնել: Երբ թագավորը համոզվեց դրա մեջ, շատ տխրեց Սարգիսի համար, կանչեց եպիսկոպոսներին, բոլոր քահա-նաներին և վանականներին և ասաց նրանց. «Ես ձեզանից մի դեղա-միջոց եմ ուզում. որքան որ Սարգիսը, ի՛մ սիրելին, քնին է տրվում, իրեն տեսնում է արյան ծովի մեջ սուզված»: Նրան տվեցին այս պա-տասխանը. «Դա այն պատճառով է լինում, որ նա շատ արյուն է թա-փել: Նա միայնակ պետք է 40 եկեղեցի կառուցի և իր ունեցվածքը հոգևորականներին տրամադրի: Այդ անելուց հետո նրա մեղքերը կներվեն և նա կբուժվի: Մենք՝ հայերս, տարվա մեջ 3 օր նրա համար պաս կպահենք՝ մինչև մեր Տիրոջ գալուստը»:*

*Երբ նա [Սարգիսը] այդ լսեց, 40 եկեղեցի կառուցեց և վարվեց այնպես, ինչպես իրեն կարգադրել էին, և այդ խառնակությունից բուժվեց: Հայերը, սակայն, մինչև այսօր 3 օր պաս են պահում նրա համար: Այնուհետև Սարգիսը պաս պահեց և եռանդուն աղոթեց և բաժանեց իր ունեցվածքը աղքատների և կարիքավորների մեջ՝ առանց իրեն որևէ բան թողնելու: Եվ Տերը գթասրտորեն ընդունեց*

*նրա աղոթքը, պասն ու ողորմությունը: Եվ նա խաղաղությամբ ավանդեց Հոգին:*

*Այժմ վերադառնանք Հայաստանի և Հռոմի բաժանման պատմությանը: Երբ նրանց մեջ այս վեճն առաջացավ, թագավորը, եպիսկոպոսներն ու ժողովուրդն իրար մեջ որոշեցին. «Այս պահից սկսած մենք չենք ուզում այլևս Հռոմի հետ ոչ մի ընդհանուր բան ունենալ, ո՛չ հոգևորականության հետ կապված և ո՛չ էլ գրի: (Այդ բանից առաջ հայերը խսկապես իրենց [սեփական] գիրը չունեին, այլ նրանք հռոմեական [հունական] գիր էին կարդում, և նաև քահանաներին էին Հռոմից բերում): Եվ նրանք կրկին ասացին. «Ի՞նչ անենք քահանաների հետ»: Նրանք կրկին խորհրդակցեցին և ասացին. «Մեր երկրում կարգված բոլոր եպիսկոպոսներն ու արքեպիսկոպոսները պետք է մեր եպիսկոպոսությունն ընդունեն»: Այդպես արեցին[6]:*

*Հայաստանի համար նաև մի օրինական, բարեպաշտ վանական էր [Աստծուն] աղոթում՝ Թադևոս անունով, և նա պաս պահեց և աղոթեց 3 շաբաթ շարունակ: Այնուհետև Ս. Հոգին 12 գրային նշան հայտնեց նրան: Բայց նրանք չկարողացան այդ գիրը կարդալ: Եվ նա գրեց այդ գրանշանները եկեղեցու մի քարի վրա, ու, մինչ կվերջացներ այդ նշանները գրել, Հոգին ավանդեց:*

*Նրա մահից հետո եպիսկոպոս Մարտիրոսը հնազանդորեն խնդրեց [Տիրոջը], սգո հագուստ հագավ, իրեն նետեց մոխրի մեջ, 42 ժամ պաս պահեց և աղոթեց, լացեց և հեծեծաց: Եվ նա կրկին 3 օր պաս պահեց, և դրանից հետո Տերը նրա աղերսները լսեց, և Տիրոջ հրեշտակը իջավ նրա մոտ և սովորեցրեց նրան տասը՝ առաջիններ տարբեր գրային նշաններ: Բայց նա [հրեշտակը] ասաց նրան. «Գնա՛ և գրի [դրանք] Ս. Թադևոսի գրած տառերի հետ. և դրանով այբուբենը վերջնական տեսք կստանա: 22 տառեր դու կունենաս և դրանով ամեն ինչ իր ճիշտ [ընթացքը] կունենա: Այդ ասում է քեզ Տերը»: Այս եպիսկոպոսը արեց այնպես, ինչպես իրեն Աստծո հրեշտակն էր հրահանգել: Եվ այսպես ստեղծվեց հայոց գիրը[7]: Այս լեզվով գրեցին նրանք Հին և Նոր Կտակարանները և անսահման ուրախացան հռոմեացիներից իրենց բաժանման համար: Եվ նրանք 10 գրաճանաչ հոգևորականներ բերեցին և ուղարկեցին Սիրիա, Եվրոպա և Եգիպտոս, որպեսզի նրանք սեփականացնեն բոլոր լեզուներում առկա Սուրբ Գրքի մեկնաբանությունները, ինչպես նաև բարեպաշտ նահատակների պատմությունները: Այս հոգևորականները եղան Եգիպտոսի, Եվրոպայի և Սիրիայի բոլոր քաղաքներում և հավաքեցին անսահման գրվածքներ՝ առանց քանակի, և հարստացրին Սուրբ Գրքի բառերով և մեկնաբանությամբ:*

*Այնուհետև նրանք տեր դարձան ճշմարիտ ուղղափառ հավատքի:*

*Այսպիսին էին Հայաստանի և Հռոմի բաժանման պատճառները:*

*Հայաստանի և Հռոմի պատմությունը, ինչպես նաև Տրդատ թագավորի և Սարգիսի պատմությունը ավարտվեց. Տիրոջ խաղաղությամբ. Ամեն:*

*1. Սա առայժմ հայտնի միակ աղբյուրն է, որում Հայաստանը կոչվում է «Տևրիզ»: Դժվար է բացատրել այս փաստը: Կարելի է ենթադրել, որ սա «Տավրոս» անվան տարբերակն է, իսկ Հայաստանը կոչվել է այդ անվամբ, քանի որ հարավից եկողների համար Հայկական (Արևելյան) Տավրոսի լեռները կարող էին ընկալվել որպես երկրի մուտք, որի անվամբ էլ կոչեին երկիրը:*

*2. Այստեղ ակնհայտ շփոթ է. Տրդատի փոխարեն պետք է հիշվեր նրա հայր Խոսրով արքան, որի դավադրական սպանությունից հետո արքայազն (և ոչ թե արքա) Տրդատն ապաստանում է Հռոմեական կայսրությունում:*

*3. Հռոմեացի մեծամեծ, որը դարձավ արքայազն Տրդատի խնամակալը, ըստ Ագաթանգեղոսի Լիկիանես կոմսն էր (**Ագաթանգեղոս,** Հայոց պատմություն, 37-47, տե՛ս նաև այս հատորում):*

*4. «Բարբարոսների թագավորի» և Հռոմի կայսեր պատմությունը հայտնի է նաև Ագաթանգեղոսից (39-47), որի համաձայն այդ պատերազմը մղվում էր գոթերի իշխանի և Դիոկղետիանոս կայսեր միջև: Ըստ այդմ, կայսեր հանդերձանքով ներկայացած Տրդատը հաղթելով՝ գերում է գոթերի իշխանին և կենդանի հանձնում Դիոկղետիանոսին: Մինչդեռ այս պատմության մեջ Տրդատը գլխատում է բարբարոսների թագավորին և գլուխը բերում հռոմեական կայսրին:*

*5. Սուրբ Սարգիսի մասին տարբեր աղբյուրներում պահպանված ավանդազրույցների մասին տե՛ս **Ա. Ղանալանյան**, Ավանդապատում, Ե., 1969, էջ ԿԱ-ԿԴ, ՀԷ, 8, 28, 51, 66, 75, 86, 103, 189, 364-368, 438: Որոշ աղբյուրներում Սուրբ Սարգիսը համարվում է հույն զորավար, որոշներում՝ հայ. այս բնագրում նա հայ հերոս է:*

*6. Հայոց եկեղեցու անջատումը Կեսարիայի մետրոպոլիտությունից (Հռոմեական կայսրությունից) և Հայոց անկախ աթոռի հաստատումն, ինչպես հայտնի է, տեղի ունեցավ 373 թվականին Պապ թագավորի ջանքերով: Եթովպական ավանդազրույցում դա վերագրվել է Տրդատ III-ի ժամանակաշրջանին:*

*7. Հատուկ ուշադրության է արժանի Տրդատ III Մեծի ժամանակ հայոց լեզվի համար 22 տառանոց այբուբենի ստեղծման մասին տեղեկությունը, որի հեղինակները հայ հոգևորականներ Թադեոսն ու Մարտիրոսն էին: Կարելի է ենթադրել, որ առաջին սրբի անունը կապվում է Թադեոս առաքյալի հետ, կամ՝ երկու սրբերին նույնացնել Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի հետ: Սակայն նման ենթադրությունները քիչ հավանական են: Բանն այն է, որ եթովպական եկեղեցին գործուն կապի մեջ է եղել հայոց եկեղեցու հետ, և Մեսրոպ Մաշտոցը պետք է քաջածանոթ լիներ եթովպական հոգևորականությանը:*

*Մյուս կողմից, տրամաբանական է, որ Տրդատ III-ի ժամանակ փորձ արվեր ստեղծել այբուբեն հայերենի համար. չէ՞ որ հայ ժողովրդին հունարենով և ասորերենով քարոզչության անարդյունավետությունը հասկանալու համար ոչ թե մեկ դար, այլ մեկ ամիսն էլ բավական էր: Այս դեպքում, իհարկե, պետք է պատասխանել հարցին, թե ինչո՞ւ հայկական աղբյուրներում ոչինչ չի ասվում այս այբուբենի ստեղծման մասին: Կարելի է ենթադրել, որ այբուբենը ստեղծողները*

*եղել են մի ուղղության ներկայացուցիչներ, որն արգելվել է պաշտոնական եկեղեցու կողմից, իսկ նրանց հետ կապված ամեն բան մոռացության է դատապարտվել: Այդպիսին էր, օրինակ, արքոնտիկների քրիստոնյա-գնոստիկական ուղղությունը Հայաստանում, որի առաջնորդ Եվտակտոսը (IV դարի կեսեր) հայտնի է օտար աղբյուրներում, սակայն նրա մասին ոչինչ չեն հաղորդում մեր պատմիչները (The Gnostic Scriptures, A new translation with annotations and introductions by Bentley Layton, New York, 1995, pp. 191-198):*

## Ս. ԵՐՐՈՐԴԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՎԱՏԱՄՔՆ ԱՐՏԱՑՈԼՈՂ ՀԱՅԿԱԿԱՆ ՏԱՊԱՆԱՔԱՐ ՀՌՈՄԻՑ

***1940-ական թվականների վերջերին Հայր Ա. Ֆեռուան Ապպիական մայրուղու (via Appia) հարևանությամբ գտնվող Ֆրանցիսկյան միաբանության վանքում հնագիտական աշխատանքներ կատարելիս հայտնաբերեց որմնախորշերից մեկում ագուցված 10 տողանոց լատիներեն արձանագրությամբ սարկոֆագի կափարիչ (30x40 սմ): Ժամանակին սարկոֆագը ամփոփել է Այդեստոս անունը կրող մի հայ երիտասարդի աճյունը:***

***Արձանագրության հնագրական տվյալներն ու ուղեկցող նյութը***




*Այդեսիոս Նոր [-] ընծայվածը [,] որ հավատացել է Հորը և Որդուն և Սուրբ Հոգուն[1] (,) ազգությամբ Հայ (,) ներքինի [,] որ ապրեց XXV (քսանհինգ) տարի և վախճանվեց խաղաղությամբ նախքան հոկտեմբերի կալենդները[:][2]*

*փաստում են դրանց ամենավաղը 325 թ. և ամենաուշը՝ 350 թ. պատկանելու հանգամանքը: Սույն հետաքրքիր հայտնագործության վերաբերյալ հայր Ա. Ֆեռուան հանդես է եկել հատուկ հաղորդագրությամբ (տե՛ս A. Ferrua, In: Affi del Primo Congresso Nazionale di Archeologia Cristianna, 1950, p. 154, et tav. XXIV, 1):*

*Արձանագրությունը (նույնանման հայկական երկու այլ տապանաքարերի արձանագրությունների հետ) մանրամասն ուսումնասիրել և մեկնաբանություններով հրատարակել է Մ. Լ. Շոմոնը (տե՛ս M. L. Chaumont, Trois epitaphes latines dédiées des Arméniens chréfiens dans e' Empire Roman, «Բազմավեպ», 1988, էջ 192-202):*

*Հայերեն թարգմանությունը, որ իրականացրել է Օ. Ս. Վարդազարյանը, կատարել է այս հրատարակությունից:*

*1. Ուսումնասիրողների կարծիքով սույն վիմագիրը Նիկեական բանաձևն արտահայտող արձանագրություններից հնագույնն է:*

*2. Այսինքն՝ մինչև սեպտեմբերի 30-ը:*

## ՊԱՅՔԱՐ ԿԵՆՏՐՈՆԱՑՎԱԾ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՀԱՄԱՐ

### ՄԻՋԱՎԱՏԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՍՐՈՒՄԸ ԽՈՍՐՈՎ III-Ի ՕՐՈՔ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ

*Փավստոս Բուզանդը V դարի հայ ամենանշանավոր պատմագիրներից է: Նա հեղինակ է «Պատմություն Հայոց» կամ «Բուզանդարան պատմութիւնք» խորագիրը կրող երկասիրության, որը ճշմարտապատում ու եզակի սկզբնաղբյուր է ոչ միայն Հայաստանի, այլև Մերձավոր Արևելքի երկրների, մասնավորապես Սասանյան Իրանի և Բյուզանդական կայսրության, պատմության ուսումնասիրության համար:*

*Փավստոս Բուզանդի Պատմության վեց դպրություններից մեզ են հասել միայն չորսը, որոնք ընդգրկում են 330-387 թթ. միջև ընկած ժամանակաշրջանի պատմությունը:*

*Պատմության բնագիրը հրատարակվել է մի քանի անգամ: Աշխարհաբար թարգմանությունն իրականացրել է Ստ. Մալխասյանցը: Ստորև բերվող հատվածները տալիս ենք «Հայ մատենագիրներ» մատենաշարով 1968 թ. լույս տեսած հրատարակության:*

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

#### *Դպրություն Գ*

*Գլ. Գ. Սրանից հետո թագավորեց Խոսրով Կոտակը՝ (Մեծ) Խոսրովի թոռը, քաջ և հզոր Տրդատ թագավորի որդին: Սրա օրոք հայրա-*

*կան աթոռին նստեց և իր հոր ու եղբոր փոխարեն քահանայապետեց Վրթանեսը՝ Գրիգոր [Լուսավորիչի] ավագ որդին: Սրանց տարիներում աճեցին ու բազմացան խաղաղությունը և շենությունը, մարդաշատությունը և առողջությունը, պտղաբերությունը, առատությունը և գործի հաջողությունը, աստվածային մեծ պաշտամունքը և աստվածահաճո բարի վարքը: Սուրբ Վրթանեսն իր հոր և եղբոր նման նրանց լուսավորում էր ու առաջնորդում: Այն դարում ծաղկած էին իրավունքն ու արդարությունը:*

*Գլ. Դ. Այն ժամանակները մեծ խռովություն ծագեց Հայոց աշխարհում, որովհետև երկու մեծ նախարարներ ու իշխաններ, գավառների ու աշխարհների տերեր, իրար հետ թշնամացան, մեծ ոխակալությամբ կռիվ բորբոքեցին և միմյանց հետ պատերազմում էին առանց իրավունքի ու պղտորում էին Հայոց մեծ աշխարհը. մեկը Մանավազյան տոհմի իշխանն էր, իսկ մյուսը՝ Որդունյաց տոհմի նահապետը: Սրանք մեծ պատերազմով կռվեցին, և շատ մարդիկ կոտորվեցին ու ոչնչացան: Ապա Խոսրով թագավորը և Վրթանես մեծ եպիսկոպոսապետը Աղբիանոս պատվական մեծ եպիսկոպոսին ուղարկեցին նրանց մոտ, որպեսզի հորդորելով հաշտեցնի և խաղաղություն հաստատի: Եվ երանելի Աղբիանոսը գնաց նրանց մոտ, որ համոզի, իրար հետ հաշտեցնի: (Բայց) նրան անարգեցին, նրա բարեխոսությունը չլսեցին, ուղարկողներին արհամարհեցին, եպիսկոպոսին մեծ անարգանքով ետ դարձրին և արքունական տունն առան ու ավերեցին, և խիստ զայրացած, հապճեպ կերպով պատերազմում էին միմյանց դեմ: Ապա թագավորը, սաստիկ զայրանալով, նրանց վրա ուղարկեց Արտավազդի որդի Վաչեին՝ Մամիկոնյան տոհմի նահապետին, Հայոց սպարապետության տոհմից, իր զորքերի մեծ զորավարին՝ այդ երկու տոհմը ոչնչացնելու, վերացնելու: Ապա Վաչե զորավարը գնաց նրանց վրա. երկու տոհմն էլ ջարդեց, ոչնչացրեց, երկու տոհմերից էլ ոչ մի արու զավակ չթողեց, ինքը վերադարձավ Հայոց Խոսրով թագավորի և Վրթանես քահանայապետի մոտ: Եվ (թագավորը) Աղբիանոս եպիսկոպոսին տվեց հօգուտ եկեղեցու Մանավազյանների ավանն ու նրանց նահապետի բուն աթոռանիստ գյուղը, (այսինքն՝) Մանավազակերտը յուր բոլոր սահմաններով և նրա շուրջն եղած գավառակով՝ Եփրատ գետի կողմերում: Իսկ Որդունիների Որդորու անունով բուն գյուղը, յուր բոլոր սահմաններով, որ գտնվում է Բասանի երկրում, տվին Բասանի եպիսկոպոսին, որ Որդորու գյուղից էր:*

1. *Խոսրով Կոտակը գահակալ է 330–338 թվականներին:*
2. *Վրթանես Ա Պարթևը քահանայապետել է 333–341 թվականներին:*

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ՄԱՍՔՈՒԹՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

***Գլ. Է.*** *Այն ժամանակ Մասքութների[1] Սանեսան թագավորը, սաստիկ բարկանալով թշնամացավ իր ազգակից Հայոց Խոսրով թագավորի հետ և հավաքեց, գումարեց բոլոր զորքերը – հոներ, փոխեր, թավասպարներ, հեճմատակներ, իժմախներ, գաթեր, գղվարներ, գուգարներ, շչբեր, ճղբեր, բաղասիճներ, եգերսվաններ և այլ խառնիճաղանջ, թափառական վաչկատուն ցեղերի անթիվ բազմություն, որոնց առհասարակ ինքն էր իշխում: Եկավ, անցավ իր սահմանը, մեծ Կուր գետը, սփռվեց ու լցրեց Հայոց աշխարհը: Թիվ չկար նրա հեծյալ գնդերի բազմությանը և ոչ հաշիվ՝ տապարավոր հետևակ զորքին, որովհետև իրենք էլ չէին կարողանում իրենց զորքը հաշվել: Բայց երբ մի նշանավոր, երևելի տեղ էին հասնում և հանդես էին կազմում ըստ գնդերի, դրոշակների և վաշտերի, հրամայում էին, որ ամեն մի մարդ մի ձեռքի քար բերի, մի տեղ աճեն, կույտ կազմեն, որպեսզի ինչքան որ լինի՝ նրանով էլ հասկացվի բազմության չափը, և ապագայի համար մնա անցած օրերի այս ահավոր նշանը: Եվ որտեղից որ անցնում էին, այսպիսի նշաններ էին թողնում ճանապարհների խաչվող տեղերում, պողոտաների վրա: Նրանք եկան, լցվեցին, Հայոց ամբողջ երկիրը ծածկեցին. քանդեցին, գերեցին ամբողջովին ավերեցին, երկրի բոլոր սահմաններում ծավալվեցին մինչև Սատաղ փոքրիկ քաղաքը, մինչև Գանձակ՝ Ատրպատականի սահմաններում:*

*Շարժվեցին, մի սահմանված տեղ հավաքվեցին Այրարատյան գավառում, որտեղ մեծ բանակ գոյացավ:*

*Եվ հայոց Խոսրով թագավորը խույս տվեց իր եղբորից, այսինքն՝ Մասքութների Սանեսան թագավորից, և գնաց Կովգի երկիրը, ընկավ ամուր Դարեոնք բերդը: Նրա հետ էր նաև հայոց ծերունի եպիսկոպոսապետ Վրթանեսը:*

*Ապա եկավ հասավ Մեծ Հայքի զորավար Վաչեն՝ Արտավազդի որդին, Մամիկոնյան տոհմից, որ այդ ժամանակ երկար ճանապարհորդություն էր կատարել Հունաց կողմերում: Նա հավաքեց նախարարներից քաջերին, խիստ բազմամարդ գունդ կազմեց և հարձակվեց (Սանեսանի) բանակի վրա լուսադեմին պաշտամունքային արարողության ժամանակ: Նրանք բանակ էին դրել Ցլու գլուխ կոչված լեռան վրա: (Վաչեն) նրանց բոլորին սրի քաշեց, ոչ մեկին կենդանի չթողեց և գերիների ողջ բազմությունը ետ դարձրեց: Հետո հավաքեց ավարը և գնաց Այրարատյան գավառի դաշտը: Այնտեղ նա Վաղարշապատ քաղաքում գտավ Մասքութների Սանեսան թագավորին բուն գնդի հետ, որ անհամար բազմություն էր կազմում: Վաչեն զոր-*

*քը վերցնելով՝ Հանկարծակի Հարձակվեց քաղաքի վրա, և տերը նրանց նրա ձեռքը մատնեց։*

*Երբ թշնամիները տեսան նրա Հարձակումն իրենց վրա, քաղաքից դուրս եկան, փախան դեպի առապարը, Օշական բերդի կողմը՝ ապավինելով այն անապատին ու քարքարոտ տեղերին։ Սաստիկ մեծ պատերազմ եղավ։ Եվ Հայոց զորավարի նիզակակիցները, որ էին Բագրատ Բագրատունին, ՄեՀնդակ և Գարեգին Ռշտունիները, Ամատունյաց տոՀմի նախարար ՎաՀանը, Վարազ Կամսարականը, Հասան, խփեցին, կոտորեցին ալանների, մասքութների, Հոների ու մյուս ազգերի զորքերը և ամբողջ առապարի դաշտն առՀասարակ լցրին մեռածների դիակներով, այնպես որ արյունը գետի նման առատ Հոսեց, և թիվ չկար սպանված զորքերին։ Սակավաթիվ մնացորդներին էլ առաջները գցած Հալածում էին մինչև բաղասիճների աշխարՀը։ Սանեսան մեծ թագավորի գլուխն էլ բերեցին Հայոց թագավորի մոտ։ Իսկ նա երբ տեսավ, սկսեց լալ ու ասաց. «Իմ եղբայրն էր, Արշակունի ցեղից»։ ԱյնուՀետև թագավորը Հայոց մեծ եպիսկոպոսապետի Հետ եկավ ճակատամարտի տեղը։ Տեսան սպանված զորքերի կոտորածը. մեռածների Հոտից երկիրը լցվել էր գարշաՀոտությամբ։ Հրաման տվին՝ երկրից գուգազ[2] Հանել, դիակները թաղել, քարակույտերով ծածկելով, որ երկիրը մեռելների դիակների գարշաՀոտությունից ու թարախից չապականվի։*

*Երկիրը խաղաղվեց բավական տարիներ։ Այսպես սուրբ Գրիգորիսի վրեժը լուծվեց Սանեսան թագավորից և նրա բանակից, որովՀետև նրանցից ոչ մեկը չմնաց։*

***Գլ. Ը.*** *Երբ Հայոց երկիրն առժամանակ խաղաղվեց, ապա Հայոց Խոսրով թագավորը Հրամայեց պարգևներ տալ այն քաջ մարդկանց, որոնք իր Համար չարչարվեցին և պատերազմների ճակատամարտերում իրենց անձը դրին Մեծ Հայք աշխարՀի Համար։ Նա Վաչե զորավարին տվեց Ջանջանակի ակունքները, Ջրաբաշխիքը և Ցլու գլուխը բոլոր գավառներով, նույնպես և մեծամեծ պարգևներ՝ մյուս նախարարներին։*

*1. Մասքութները սկյութական ցեղեր էին, որոնք, ըստ «ԱշխարՀացույց»-ի ապրել են Կասպից ծովի ափին՝ Դերբենդից Հյուսիս ընկած տարածքում։*

*2. Գուգազ Հանել՝ նշանակում է պարտադիր կարգով մարդիկ Հավաքագրել ֆիզիկական աշխատանքների Համար։*

## ՄԱՍՔՈՒԹՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔՆ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

***Գլ. Թ.*** *Սրա ժամանակ հյուսիսային Կովկասի բնակիչները միաբանվելով, իմանալով նրա (Խոսրովի) թուլասրտությունն ու ծուլությունը, մանավանդ հրապուրվելով Սանատրուկի թելադրությունից, պարսից Շապուհ թագավորի գաղտնի հրամանով արշավեցին ու հասան մեր երկրի կենտրոնական վայրերը մեծ բազմությամբ՝ մոտ երկու բյուր մարդով: Պատերազմով նրանց դեմ դուրս եկան Հայոց արևելյան և արևմտյան զորքերն իրենց զորապետներով, այսինքն՝ Բագարատ ասպետով և Ամատունյաց Վահան նահապետով: Որովհետև մեր հարավային գնդերը Խոսրովի մոտ էին Ծոփաց աշխարհում, իսկ Միհրանին սպանել ու մեր հյուսիսային գունդը ջարդել ու փախցրել էին թշնամիները և հասցրել էին մինչև Վաղարշապատ ու պաշարել: Նրանց վրա հանկարծակի հարձակվեցին մեր արևելյան և արևմտյան զորքերը և ետ վանեցին դեպի Օշականի առապարը և թույլ չտվին, որ նրանք ցրիվ գալով նետաձգություն կատարեն ըստ իրենց սովորության, այլ քաջածի հեծյալները նրանց չտապ-չտապ ու արագապես հետամուտ լինելով, մղեցին քարքարոտ դժվար տեղերը, այնպես որ թշնամիներն ակամայից ստիպվեցին ճակատամարտ տալ:*

*Նրանց նիզակավորների զորագլուխն էր մի վիթխարի հսկա՝ սպառազինված և ամբողջ մարմինը ծածկված խիտ թաղիքով. այսպես նա արշավում էր զորքի մեջ: Հայոց քաջերն աչքերը դեպի նա պահելով՝ հարձակվում էին վրան, բայց չէին կարողանում վնասել, որովհետև երբ նիզակով խփում էին, թաղիքակիրը չրջվում էր: Այս ժամանակ քաջ Վահան Ամատունին... ձիու գավակից խփելով՝ գետին գլորեց ահագին հսկային: Այս դեպքն առիթ դարձավ թշնամիների փախուստին և հայոց զորքին զորացրեց հաղթանակ տանելու:*

*Այստեղից Ծոփաց աշխարհը դառնալիս՝ Բագարատն առանց նախանձի հաստատապես վկայում է թագավորին Վահանի քաջագործությունների և այս հերոսական դիպվածի մասին: Ուստի թագավորը նրան է պարգևում ճակատամարտի տեղը՝ Օշականը, որտեղ Վահանն ինքնակամ դեմ ելավ ու մենամարտեց: Իսկ Միհրանի փոխարեն զորքի վրա նշանակում է Գարջույլ Մաղխազին՝ Խորխոռունիների նահապետին:*

## ՓԱՎՍՏՈՍԸ ԽՈՍՐՈՎԱԿԵՐՏ ԱՆՏԱՌԸ ՏՆԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Գ*

***Գլ. Ը.*** *Եվ հրաման տվեց թագավորն իր զորավարին՝ երկրից բազմաթիվ մշակներ հանել, անտառներից վայրի կաղնի բերել ու տնկել Այրարատյան գավառում՝ սկսելով արքունի ամուր բերդից, որին ասում են Գառնի, մինչ Մեծամորի դաշտը, այն բլուրը, որ կոչվում է Դվին և գտնվում է Արտաշատ մեծ քաղաքի հյուսիսային կողմում: Եվ այսպես անտառ տնկեցին գետի ընթացքով դեպի ներքև, մինչև Տիկնունի ապարանքը: Նա այս անտառը կոչեց Տաճար մայրի: Մի ուրիշ անտառ էլ տնկեցին նրանից դեպի հարավ, եղեգնուտի եղերքով, և ամբողջ դաշտը լցրին կաղնի տնկով, սրա անունն էլ դրին Խոսրովակերտ[1]: Նույն տեղում շինեցին նաև արքունական ապարանքներ: Երկու անտառներն էլ պարիսպներով փակեցին, առանց իրար հետ կցելու, անցուդարձի ճանապարհի համար: Անտառն աճեց ու բարձրացավ: Հետո թագավորը հրամայեց ամեն տեսակ որսի կենդանիներ ու գազաններ հավաքել ու լցնել պարսպապատված տեղերը, որպեսզի նրա թագավորության որսի ու ուրախության տեղեր դառնան: Վաչե զորավարն անմիջապես կատարեց թագավորի ասածները:*

*1. Խոսրովի անտառը, որ աշխարհում արհեստական տնկված հնագույնն է, պահպանվել է առ այսօր:*

## ՓԱՎՍՏՈՍԸ ՏԻՐԱՆ ԹԱԳԱՎՈՐԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Գլ. ԺԱ.*** *Սրանից հետո դաժան խիստ պատերազմ տեղի ունեցավ պարսիկների և հայերի միջև, որովհետև (պարսիկները) մեծ բազմությամբ հավաքվեցին, եկան Հայոց աշխարհն առնելու: Ապա Մեծ Հայքի սպարապետ և զորավար Վաչեն հավաքեց նախարարական զորքերի ազատների բանակը և դուրս եկավ պարսից զորքերի հետ պատերազմելու: Երկու կողմից էլ անասելի կոտորած էր լինում, և շատ մեծամեծ ավագանիներ կոտորվում, ոչնչանում էին: Այս պատերազմում ընկավ նաև Վաչեն՝ Հայոց մեծ սպարապետը. և ամբողջ աշխարհը մեծ սգի մեջ ընկավ, որովհետև Տերը շատ անգամ նրա ձեռքով փրկություն էր շնորհել հայերին: Ապա Վրթանես եպիսկոպոսա-*

պետը հավաքում, մխիթարում էր բոլորին, իրեն՝ Խոսրով թագավորին, և բոլոր զորքերին, որոնք սրտակեղ ողբով ու արտասուքով, թախծալից հոգսերով, մեծ լացուկոծով բռնված սգում էին՝ գնացածների տառապանքները մնացածներին համարելով:

Եվ Վրթանես մեծ քահանայապետը օրենք սահմանեց՝ երկրում տարեցտարի նրանց հիշատակը կատարել, ինչպես և նրանց, որոնք նույն կերպով երկրի փրկության համար կմեռնեն: Կանոն դրեց՝ սրանց անունները հիշել Աստծու սեղանի առաջ պատարագի ժամանակ՝ երբ սրբերի անունները հիշատակվեն, որոնցից հետո՝ սրանցը, իսկ ընկածների հարազատներին հող և խնամք տանեն: Որովհետև, ասում էր, սրանք պատերազմի ճակատամարտում ընկան Հուդա և Մատաթիա Մակաբեների ու նրանց եղբայրների նմանությամբ:

Սրանից հետո մեռավ քաջարանց աշխարհաշեն Խոսրովը՝ Մեծ Հայքի թագավորը: Ամբողջ Մեծ Հայքի աշխարհներից ու գավառներից հավաքվեցին, սուգ արին, լացին ու տարան իր նախնիների մոտ, Անի, Դարանաղիի Եկեղյաց գավառը: Նրանից հետո մեռավ նաև Վրթանեսը՝ մեծ քահանայապետը: Ամբողջ Հայոց աշխարհը հավաքվեց և մեծ արարողությամբ, սաղմոսներով ու հոգևոր երգերով, կանթեղներով, մոմերով, անուշահոտ խնկով՝ արքունական կառքերով փոխադրեցին սուրբ Վրթանեսին, մեծ վշտով՝ որ որբ մնացին իրենց բնիկ տիրոջից և հոգևոր վարդապետից. և մեծ լացով ու կոծով և տրտմությամբ հուղարկավորեցին Դարանաղյաց գավառի Թորդան գյուղը ու Գրիգոր մեծ հայրապետի մոտ նրա մարմինն ամփոփեցին և նրա կենդանի մշտակատար հիշատակը կատարելով՝ ետ դարձան:

III, գլ. ԺԲ. Երբ Խոսրով թագավորը մեռավ, Մեծ Հայք աշխարհի թագավորական իշխանությունն ստանձնեց Խոսրովի որդին՝ Տիրանը[1]: Նույնպես և մանուկ սուրբ Հուսիկը հաջորդեց ու գրավեց Հայոց հայրապետների տեղը: Տիրան թագավորը, սովորության համաձայն, նրա հետ գումարեց մեծ նախարարներին՝ Վաղարշ մեծ հազարապետին, որ Մեծ Հայքի հազարապետության տոհմից էր ու Անձիտի իշխանն էր, և նրա հետ Մեծ Ծոփքի Զարեհ իշխանին և (մյուս) Ծոփաց աշխարհի Վարազ Շահունի իշխանին ու Հաշտենից գավառի Գնիթ իշխանին Կամինական տոհմից և Վանանդի գավառի իշխան Որոթին և Անձևացյաց տոհմի իշխան Շահենին և Գողթնի իշխան Ատամին և Կողբացոց իշխան Մանավազին և Ջորի աշխարհի իշխան Գորութին և Խորխոռունյաց տոհմից մախազության տան իշխան Մանասպին և Սահառունյաց տոհմի իշխան Տիրոցին և Գնունյաց իշխան Աբային:

1. Տիրան Արշակունին գահակալել է 338-350 թվականներին:

## ՀԱՅ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ՏԻՐԱՆ ԹԱԳԱՎՈՐԻ ԺԱՄԱՆԱԿ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍԻ

*Գլ. Ի. Բայց դեռ բարեկամություն էր տիրում երկու թագավորների՝ Հայոց և պարսից միջև: Այս ժամանակ Ատրպատականում նստում էր մի բարձր պաշտոնյա, որի անունն էր Շապուհ-Վարազ: Արդ՝ մինչ կատարյալ խաղաղություն էր տիրում երկու թագավորների միջև, տիրոջ կամքով՝ մի չնչին բանի պատճառով խռովություն ծագեց մի անարգ մարդու ձեռքով, որ մոլորությամբ դևից պակաս չէր, անունը Փիսակ, որը Տիրան թագավորի սենեկապետն էր՝ Սյունյաց տոհմից: Սա պատվիրակ էր գնացել Վարազ-Շապուհի մոտ, որին պարսից թագավորը սահմանապահ էր թողել Ատրպատականում:*

*Այն ժամանակ Տիրան թագավորը մի ձի ուներ, որի վրա բոլորը զարմանում էին: Այդ ձին մուգ՝ չագանակագույն և պուտպուտիկ էր, ուժով լի, հոյակապ, հռչակված, բոլոր ձիերից մեծ և բարձր, տեսքով բոլորից գեղեցիկ ու սիրուն, որի նման ուրիշը չկար: Փիսակը՝ թագավորի սենեկապետը, պատվիրակ գնալիս այս ձին մատնեց Վարազին, որի հետ բարեկամացել էր, և նրանից թուղթ առնելով՝ բերեց մատուցեց Հայոց թագավորին: Դրան համաձայն չլինելով՝ թագավորը չկամեցավ (ձին) տալ: Բայց որովհետև այն մարդուց կասկածում էր, միգուցե երկու թագավորների միջև խռովություն առաջացնի, որոնեց և գտավ այն գույնի մի ձի՝ նույն նշանով, նույն տեսքով, բացի մեծությունից,— որովհետև այնպիսի մեծությամբ ուրիշ տեղ չկար,— նույն տեսակ պուտպուտիկ, մուգ չագանակագույն, և հրովարտակով ու ընծաներով Ատրպատականի իշխանին՝ Վարազին ուղարկեց նույն մոլի Փիսակի ձեռքով: Նրան խրատում ու խորհուրդ էր տալիս, թե՝ «Ասա՛, այս այն ձին է, որ խնդրեցիր. քո սիրո համար քեզ չխնայեց»: Իսկ նա երբ Վարազի մոտ հասավ, խնայելու գաղտնիքը բացեց և ջանաց գրգռել՝ չկամենալով ազատվել իր նենգախոսությունից. նա ավելի սրեց իր չարախոսությունը, ասելով. «Հայոց Տիրան թագավորն այնքան լցված է նախանձով, չկամությամբ, թշնամությամբ և ատելությամբ, այնքան անհավատարիմ և աներկյուղ է պարսից թագավորի և պարսից բոլոր զորքերի նկատմամբ, որ մինչև իսկ մի կաշի խնայեց ու թաքցրեց և, քեզ խաբելով ու ծաղրելով, մի ուրիշ ձի քեզ ուղարկեց իմ ձեռքով: Եվ միայն այս չէ,— ասում էր նա,— նա հույս է դրել կայսեր ու նրա զորքի վրա, մտադրվել է Սասանի ցեղից խլել պարսից թագավորությունը, որովհետև, ասում է, այդ տերությունը մերն է եղել և մեր հայրերինը. ես, — ասում է, չեմ հանգստանա, մինչև մեր նախնի հայրերի պատիվը ետ չդառնա, մինչև նախնի թագավորությունը նորից չդարձնեմ հայրենի զավակներին, այսինքն իմ*

*տոհմին, իմ տանը և ինձ»: Այս և այսպիսի խոսքերով անօրեն Փիսակը գրգռում էր Վարազին իր բնիկ տիրոջ դեմ, իր թագավորի համար մահ էր նյութում:*

*Երբ Վարազ-Շապուհը՝ Ատրպատականի մարզպանը, այս բոլորը լսեց կատաղախոս, չնաբերան Փիսակից, անմիջապես ամբաստանության թուղթ գրեց հայոց թագավորի մասին և ուղարկեց պարսից Ներսեհ թագավորին: Եվ այն աստիճան պարսից թագավորին գրգռեց, զայրացրեց, դրդեց, չարացրեց, բարկացրեց հայոց թագավորի դեմ, որ նրանից հրաման ստացավ, թե արդյոք հնար չկա՞ որևէ միջոց որոնել ու գտնել հայոց թագավորին մեքենայությամբ գայթակղելու, որսալու և բռնելու:*



***Շապուհ II Երկարակյաց***

*Այն ժամանակ Վարազը պատվիրակ ուղարկեց հայոց թագավորի մոտ՝ հաշտության և խաղաղության պատրվակով խոսելու նրա հետ: Նա սերն ու կարոտը պատճառ բերելով՝ թույլտվություն էր խնդրում նրան այցելության գալու: Երբ հայոց Տիրան թագավորն այս լսեց, փութով, մեծ ուրախությամբ հրամայեց հրավիրել նրան: Դեռ նա չեկած՝ թագավորն իր սենյակի ներքին սպասավորների հետ խորհուրդ էր անում: Նա ասում էր. «Մեզ մոտ եկող հյուրին հարկավոր է զվարճացնել և ուրախացնել որսերով, կերուխումով ու ամեն տեսակ վայելչություններով: Բայց պետք չէ, որ նա այստեղ մեր երկրում առատ որսի տեղեր տեսնի, որովհետև պարսից ազգը չարասիրտ, նախանձոտ, չարաբարո, նենգ է. այլ պետք է գտնել որսով ոչ հարուստ տեղեր, որով նրան զվարճացնենք, բայց առատ որս չանենք, որսի մեծ կոտորածներ չանենք ցույցի համար. միայն ձևի համար անենք՝ պարսիկների դառնության և չարության պատճառով: Ապահունյաց երկրում Մեծ Մասիսի ստորոտում որս անենք, որի անունը կոչվում է Աղիորսք քաղաք»:*

*Շապուհ-Վարազը եկավ հասավ երեք հազար մարդով, ներկայա-*

*ցավ Թագավորին Ապահունյաց երկրում և մեծ պատվով նրանից մեծարվեց: Իսկ այն խոսքերը, որ Թագավորը որսի մասին ասաց, անմիջապես պարսից զորավարի ականջին հասան այն քսու և բանսարկու, այն տիրանենգ ու տիրադրուժ, տիրասպան ու տիրամատնիչ Փիսակի, այն աշխարհավեր մարդու բերանով:*

*Սակավ օրեր նրանք միասին ուրախություն էին անում, բայց պարսից իշխանն իր մեջ ունեցած թշնամությունը խորամանկությամբ ծածուկ էր պահում և հարմար առիթի էր սպասում, որ դավը գլուխ բերի:*

*Դեպքն այնպես բերեց, որ այդ ժամանակները զորավարներն այնտեղ չէին, այլ խռովել հեռացել էին, այսպես էլ մյուս ազատանին, մեծամեծ նախարարներն ու ավագ տանուտերերը. նույնպես էլ արքունական զորքերն իրենց տներում, իրենց կացարաններում հանգստանում էին: Թագավորի մոտ ուրիշ մարդ չէր մնացել, ո՛չ հետևազոր և ո՛չ այրուձի, բայց միայն սակավաթիվ սպասավորներ, որսորդական շների պահապաններ, ճանապարհների մշակներ, վրանապահ, խառնիճաղանջ զինվորներ և աշխարհազոր: Այնտեղ էին նաև տիկինը և արքայորդին՝ մանկահասակ Արշակը: Այսպես, քիչ մարդիկ կային այնտեղ այդ ժամանակ. որովհետև Թեպետ տեսնում էր, որ պարսից զորավարն ուժեղ գնդով է եկել,— որովհետև երեք հազար լավ սպառազինված մարդիկ կային նրա հետ,— բայց չէր զգուշանում ու կասկածում, քանի որ տեսնում էր, թե նա խաղաղության համար է եկել մեծ նվերներով, ընծաներով և շքեղ մեծարանքներով:*

*Ոչ շատ օրեր անցնելուց հետո Թագավորին ընթրիքի հրավիրեցին՝ նրան պատվելու համար: Երբ խմելն սկսեցին, Թագավորը և նրա հետ եղողները սաստիկ հարբեցին, և այս ժամանակ դարանակալ զորքն անսպասելի կերպով, հանկարծակի հարձակվելով սեղանակիցների վրա՝ յուրաքանչյուրին առանձին բռնեցին, իսկ վահանավորներն ու տապարավորները Տիրան Թագավորին շրջապատեցին: Բռնելով, նրա ոտքերն ու ձեռքերը կապեցին երկաթե շղթաներով. ամբողջ բանակը, ինչ որ գտան, ավար առան: Թագավորի գանձերը, գույքը, կինը, որդիները, ինչ որ բանակում գտան, Ապահունյաց երկրից տարան:*

*Եկան հասան մի գյուղ, որին ասում էին Դալարիք: Երբ պարսից զորավարը եկավ Դալարիք գյուղը մտավ, իր հետ տանում էր կապված Տիրան Թագավորին: Եվ Վարազն ասաց. «Ապա ածուխ գտեք, որով երկաթ շիկացնենք, որ հայոց այս Թագավորի աչքերը դաղենք»: Իսկույն ածուխ բերին և Տիրանի աչքերը դաղեցին:*

***Գլ. ԻԱ.*** *Այն ժամանակ հայոց ավագանին մեծ նախարարներից (բաղկացած պատգամավորություն) ուղարկեց հունաց Թագավորի*

*մոտ նվերներով (առաջարկելով), որ նրան ձեռք մեկնեն և հնազանդությամբ նրան ծառայեն. իսկ նա իրենց թիկունք լինի և օգնի վրեժխնդիր լինելու թշնամիներից: Ուղարկեցին Սյունյաց Անդովկ նահապետին և Արշարունյաց նահապետ Արշավիր Կամսարականին: Սրանք գնացին հասան Հունաց աշխարհը, կայսերական պալատը, հանձնեցին հրովարտակը, բերած նվերներն առաջ բերին և թագավորին ներկայացրին ամբողջ ժողովրդի խնդրանքը: Կայսրը բոլոր հանգամանքները լսելով՝ մեծ փութով ու պատրաստությամբ ձեռնարկեց գործին վերահասու լինելու և թիկունք ու օգնական լինելու Հայոց աշխարհին, մանավանդ որ հիշում էր այն դաշինքը՝ երդումով կնքված ու հաստատված Կոստանդիանոս կայսեր և Տրդատ թագավորի միջև:*

*Եվ մինչ դեսպանները, որոնք Հայոց աշխարհից կայսերական պալատն էին գնացել, դեռ չէին դարձել իրենց աշխարհը, արևելքի կողմից ինքը՝ պարսից Ներսեհ թագավորը, շարժվեց ու եկավ, որ Հայոց աշխարհը գրավի, այրի, ավերի, ամբողջապես փչացնի և ամբողջ սահմաններով իր երկրին կցի: Նա եկավ իր բոլոր զորքով, բոլոր աղխով, մեծ կարավանով, բազմաթիվ փղերով, անչափ մթերքներով, բուն մաշկապաճյանով, բոլոր կանանցով և տիկնանց տիկինով. եկավ մտավ Հայաստանի սահմանները, ամբողջ աշխարհը բռնեց: Այս ժամանակ Հայոց նախարարների ազնվական զորքերն իրենց ընտանիքներն առնելով փախչում էին Հունաց կողմերը, գուժում էին (այս լուրը) կայսերական բազմագունդ բանակի նախարարներին: Հունաց թագավորը երբ այս բոլորը լսեց, ապա ինքն էլ իր զորքը գումարեց և շարժվեց, եկավ Հայոց աշխարհը՝ պարսից թագավորի դեմ:*



***Կոստանդիանոս I Մեծ***

*Նա բանակը թողեց Սատաղ[1] քաղաքի մոտերը. ինքն ընտրեց հայկական բանակից երկու գլխավոր խելոք մարդ, այսինքն՝ Արշավիրին և Անդովկին, որոնք իբրև պատվիրակներ առաջ նրա մոտ էին գնացել: Նրանց հետ միասին ինքը՝ կայսրը, շինականի կերպարանքով, իբրև կաղամբավաճառ մտավ պարսից բանակը, որ այդ ժամանակ գտնվում էր Բասյան գավառում, Ոսխա կոչված գյուղում: Նրանք մտան պարսից թագավորի բանակը, դիտեցին, քննեցին, նրանց զորքերի զորության չափն առան և այստեղից դարձան իրենց բանակը: Կազմակերպվեցին, պատրաստվեցին, վրա հարձակվեցին և գտան պարսից բանակը նույն տեղում բանակած՝ մեղկ, անհոգ, միա-*

միտ, աններկյուղ խաղաղությամբ: Ցերեկով նրանք հարձակվեցին պարսից թագավորի վրա, ամբողջ բանակը սրի քաշեցին, ոչ մեկին կենդանի չթողին: Բանակը կողոպտեցին, ավար առան, բռնեցին թագավորի կանանց ու Բամբիշին (տիկնանց տիկին) և նրանց հետ տիկիններին, նրանց բոլոր գույքն ու ստացվածքները, գանձերը, պաշարեղենը, սարքը կանանց հետ միասին գերի վերցրին: Միայն թագավորը հազիվհազ պրծնելով, մի առաջընթաց ձիավոր սուրհանդակով փախավ, հազիվ կարողացավ իր աշխարհն ընկնել: Իսկ կայսրը մեծ չքեղությամբ պերճացած երևաց բանակում. բոլոր չափահասներին կոտորեցին, իսկ մնացածներին գերի տարան Հունաց երկիրը: Իսկ (Հայոց) աշխարհի վրա վերակացու թողեց երկու իշխաններին՝ Անդովկին և Արշավիրին, որոնց մեծ պարգևներով մեծարեց. և նրանց հանձնելով բոլոր իշխաններին ու երկիրը՝ ինքը վերադարձավ Հունաստան՝ իր երկիրը:

Այն ժամանակ Հունաց Վաղես թագավորը[2] հրովարտակ գրեց պարսից թագավորին. «Նախ դու,– ասում է,– ետ դարձրու Հայոց աշխարհից տարածդ գերիները, Տիրան թագավորով հանդերձ, և առհասարակ ինչ որ այնտեղից առել ես. երբ դու այս անես, ապա ես էլ ետ կդարձնեմ՝ ինչ որ առել եմ, ուրեմն առաջ դու նրանցից առածդ ավարը վերադարձրու, ապա ես քոնը կվերադարձնեմ»:

Պարսից թագավորը երբ այս հրամանը լսեց, իսկույն նրա ասածները կատարեց. կապված Տիրանին բանտից ու կապանքներից արձակեց. քաղցրությամբ խոսեց հետը, թե նրան կրկին կթագավորեցնի և պատվով իր աշխարհը կուղարկի: Իսկ Տիրանը պատասխանեց, թե «Ինձ կույր տեղովս, անօգուտ, անպատշաճ, նույնիսկ անկարելի է թագավորություն անել. իմ փոխարեն թագավորեցրու իմ որդուն՝ Արշակին»:

Այն ժամանակ (պարսից թագավորը) նրա Արշակ որդուն թագավորեցնում է Հայոց աշխարհի վրա և թագավորի կանանց ու մյուս բոլոր գերիներին, գանձերով, ընծաներով, ստացվածքներով հանդերձ, առհասարակ գերությունից ետ է դարձնում. իրեն՝ Տիրան թագավորին էլ պարսից թագավորը մեծ պատրաստությամբ ու պատվով իր երկրից ուղարկեց Հայոց աշխարհը: Այսպես նա հավատարմությամբ կատարեց Հունաց թագավորի հրամայածները:

1. **Սատաղ** – Փոքր Հայքի քաղաքներից է, գտնվել է Բաբերդից ոչ հեռու, որտեղ գտնվել է ներկայումս բրիտանական թանգարանում պահվող Անահիտ դիցուհու արձանի գլուխը:

2. Վաղեսը (Վալենտ) Վալենտինիանոս I-ի եղբայրն է, որին նա հանձնել էր կայսրության արևելյան երկրների կառավարումը: Վաղեսը գահակալել է 364–378 թվականներին:

## ԱՐՇԱԿ II-Ի ՋԱՆՔԵՐԸ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Դ*

***Գլ. Ա.*** *Երբ հաշտությունը կայացավ, և կատարյալ խաղաղություն հաստատվեց հունաց թագավորի ու պարսից Ներսեհ թագավորի միջև, ապա սիրով համաձայնվեցին մեկը մյուսի կամքը կատարել, և հունաց կայսրը ետ դարձրեց պարսից թագավորի գերիներին: Ապա պարսից Ներսեհ թագավորն էլ թագավորեցրեց Տիրանի Արշակ որդուն և նրա հոր, նրանց կանանց և բոլոր գերիների հետ, նրանց ամբողջ գանձերով ու ստացվածքներով ուղարկեց մեծ փառքով: Արշակը՝ Մեծ Հայքի թագավորը, Ասորեստանում թագավոր դառնալով (այնտեղից)՝ իր հոր և բոլոր ընտանիքների հետ միասին եկավ հասավ Հայոց աշխարհը, երկրի ցրվածներին հավաքեց ու նրանց վրա թագավորեց*[1]*:*

*Այն ժամանակ մեծ խաղաղություն հաստատվեց: Հայոց աշխարհի բոլոր մարդիկ, որոնք կորել էին, փախել ու թաք էին կացել, հավաքվեցին և ապահով ու խաղաղ ապրեցին Արշակ թագավորի հովանավորության տակ: Աշխարհն էլ երկու թագավորների միջև խաղաղվեց, բարեկարգվեց, կազմակերպվեց, և այնուհետև (մարդիկ) բնակվում էին խաղաղությամբ, յուրաքանչյուրը վայելում էր իր ունեցվածքն ու արդյունքը:*

***Գլ. Բ.*** *Այն ժամանակ Արշակ թագավորը դուրս եկավ փնտրելու քաջ Մամիկոնյան զորավարների տոհմը, մանավանդ որ նրանք իր դայակներն ու սնուցողներն էին եղել: Գնաց, նրանց գտավ Տայքի ամուր վայրերում, իրենց աշխարհում. նրանց սիրտն առավ ու հաշտեցրեց, որովհետև նրանք Տիրանի խելագար գործերի ժամանակից ի վեր պառակտվել, անջատվել էին հայոց միաբանությունից և բոլոր գործերից: Թագավորը Վարդանին՝ ավագ եղբորը, նշանակեց նրանց ցեղի նահապետ, միջին եղբորը՝ Վասակին, իր դայակին, նշանակեց սպարապետ և զորավար պատերազմական գործերում, նույնպես և կրտսերին նշանակեց զորապետ: Նույնպես և մյուս մեծամեծ նահապետների զորքերն ըստ իրենց աստիճանների հաստատեց՝ ինչպես որ նախկին թագավորների ժամանակ եղել էր: Մեծամեծներին էլ հնազանդության էր բերում, բոլորի զորքերը կողմերի վրա բաշխելով՝ Հայաստանի սահմանների վրա սահմանապահ էր նշանակում:*

*Եվ Հայաստան աշխարհի թագավորությունը նորոգվեց ու պայծառացավ, ինչպես առաջ. մեծամեծներն իրենց գահերում, գործակալներն իրենց աստիճաններում: Եվ առաջին գործակալ-հազարապետ նշանակեց շինականներին շենացնող Գնունյաց ցեղը, որպեսզի իբրև ամբողջ երկրի հազարապետներ՝ հոգատարությամբ խնամեն աշխարհաշեն, աշխարհը կերակրող գյուղացիությանը: Նույնպես և սպարապետության՝ զորավարության գործում, ճակատ առ ճակատ նիզակներով կռիվ մղելու համար, նշանակեց փառավոր ու ազնվազգի, աղավնակիր դրոշակներով, արծվի՝ վարուժանի նշաններով, աներկյուղ ու քաջասիրտ նախամարտիկ, քաջանուն, բարենշան, բարեհամբավ ու բարեգործ, պատերազմական գործերում հաջողակ Մամիկոնյանների ցեղից, բուն նախնյաց կարգերի համաձայն, որին երկինքը միշտ և հանապազ պարգևում էր հաղթության ու քաջության բարի անուն պատերազմական գործերում, և տվեց նրանց զորավարության իշխանություն Մեծ Հայքի բոլոր զորքերի վրա: Այս ցեղերից զատ՝ խոնարհ աստիճանի գործակալներ, որոնք թագավորի ներկայությամբ բարձերի վրա բազմում էին, պատիվները գլխներին,– չհաշվելով մեծամեծ նահապետներին ու տանուտերներին, լոկ միայն գործակալները՝ ինը հարյուր բարձ էին կազմում, որոնք թագավորական սեղանի ուրախության մասնակից էին լինում, բացի հոտընկայս սպասավորության պաշտոնյաներից:*

***Գլ. Գ.*** *Ապա Արշակ թագավորի մոտ ժողովի գումարվեցին նախարարական շատ ցեղերի ու տոհմերի մեծամեծ նահապետները, գնդերի ու դրոշակների տերերը, բոլոր սատրապները, նախարարներն ու ազնվականները, պետերը, իշխանները, զորավարներն ու սահմանապահները: Ընդհանուր համաձայնությամբ խորհուրդ արին, որ հավաքվեն ու մտածեն իրենց առաջնորդի մասին, թե ո՛վ է արժանավոր հայրապետական աթոռը նստելու և Քրիստոսի բանական հոտը հովվելու: Բոլոր ժողովականների մեջ այս միտքն ընդհանուր հավանություն գտավ, որ առաջնորդ ընտրեն Գրիգորի տան հետնորդներից, նրա սերնդից: Որովհետև բոլորն ասում էին թագավորին. «Ինչպես, որ աստված նորոգեց ձեր թագավորությունը, պետք է նույնպես նրա սերնդից նորոգել հոգևոր նահապետությունը. երբ այդ աթոռը նորոգվի,– ասում էին,– ապա և պայծառ վարքուբարքը կնորոգվի Հայոց աշխարհում»:*

*Ապա աշխարհաժողով բազմությունը հականե հանվանե հիշեց Ներսեսին՝ Աթանագինեսի որդու՝ Հուսիկ քահանայապետի թոռանը, Վրթանեսի որդու, որ առաջին մեծ քահանայապետ Գրիգորի որդին*

*էր. նրա մոր անունն էր Բամբիշ, որ Տիրան Թագավորի քույրն էր: Սա մանկության հասակում աշխարհականի կյանք վարելով՝ ամուսնացած էր. փոքր հասակից ի վեր սնվել ու սովորել էր Գամիրքի Կեսարիա քաղաքում, վստահելի ուսուցիչների ձեռքի տակ և սիրելի էր դարձել իր դասընկերներին: Իսկ այս ժամանակ նա զինվորական պաշտոնյա էր, Արշակ Թագավորի սիրելի սենեկապետն էր, Թագավորի կյանքի բոլոր կարգերին հավատարիմ ներքուստ և արտաքուստ:*

***Գլ. Դ.*** *Այնուհետև գումարեցին մեծամեծ իշխաններին, որ ցանկալի Ներսեսին առնեն տանեն այնտեղ, որտեղ սովորաբար հայրապետներին օծում էին: Նաև հայոց եպիսկոպոսների բազմությունը հավաքվեց Թագավորի մոտ նույն հարցի առիթով: Բոլորը միաբան խորհուրդ անելով որոշեցին, որ նա նստի գլխավորի աթոռը: Եվ բոլորի միաձայն հավանությամբ – եպիսկոպոսների և՛ Թագավորի, և՛ աշխարհականների բազմության պատվիրակները ճանապարհ ընկան ու գնացին. մարդպետության մեծ իշխան Հայրը, ասպետության մեծ իշխան Բագարատը, Ծոփքի մեծ իշխան Դանիելը, Մեհանդակ Ռշտունին, Սյունյաց Անդովկ իշխանը, Շիրակի և Արշարունյաց իշխան Արշավիրը, մյուս Ծոփքի իշխան Նոյը, Ամատունյաց տան իշխան Պարգևը: Սրանց բոլորին պատրաստեցին և ճանապարհ ձգեցին մեծամեծ նվերներով ու ընծաներով և հավաստի հրովարտակներով, որ գնան Գամիրքի երկիրը, Կեսարիա մայրաքաղաքը, կաթողիկոսների կաթողիկոս Եվսեբեոսի մոտ, որպեսզի այնտեղ Սուրբ Ներսեսին ձեռնադրեն Մեծ Հայքի կաթողիկոս:*

*1. Արշակ II-ը գահակալել է 350-368 թվականներին:*

## ԱՇՏԻՇԱՏԻ ԺՈՂՈՎԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՆ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ

***Գլ. Դ*** *(Ներսես Պարթև կաթողիկոսը) գնաց հասավ Տարոն գավառի կողմերը և իր մոտ հավաքեց Հայոց աշխարհի բոլոր եպիսկոպոսներին: Հավաքվեցին Աշտիշատ[1] գյուղում, որտեղ առաջին անգամ եկեղեցի էր շինված, որովհետև նա էր Մայր եկեղեցին և նախնյաց եկեղեցական ժողովների ժողովատեղը: Բոլորը հոժարությամբ ժողովի եկան և օգտակար խորհրդակցություն ունեցան՝ աշխարհական կարգերը բարեկարգելու, հավատի ընդհանուր կանոնները սահմանելու: (Այս ժողովում) կարգ ու կանոն սահմանեցին, կազմակերպեցին և Հայոց աշխարհի ամբողջ ժողովուրդը դարձրին իբրև վանականների մի ընդհանուր միաբանություն, թույլ չտալով ամուսնու-*

*թյուն: Ներսես եպիսկոպոսապետն ամենքի վրա տարածում էր առաքյալներից սահմանված կանոնները, բոլորին խրատ էր տալիս, հորդորում էր, առաջնորդում էր դեպի բարեգործություն և նախանձախնդիր էր լինում. նաև ինքն էր անում, ապա ուրիշներին նույնը ուսուցանում: Նույնը հրամայում էր կատարել Հայոց ամբողջ աշխարհում, գավառներում, կողմերում, անկյուններում: Որոնում գտնում էին պատշաճ տեղեր, զատում էին՝ նրանց մեջ աղքատանոցներ շինելու համար, որտեղ պետք է հավաքեին ախտավորներին, բորոտներին, հաշմանդամներին, ցավագարներին: Որոշեցին շինել ուրկանոցներ[2], սահմանել նրանց սնունդ և դարման, իսկ աղքատների համար՝ պատսպարան: Որովհետև Ներսես մեծ եպիսկոպոսապետն այսպես հրամայեց, և սուրբ ժողովը հավանություն տվեց, որ այսպիսի մարդիկ նստած մնան իրենց կացարաններում, դուրս չգան տառապանքով մուրալու, և բոլորովին իրենց դռներից ոտք դուրս չդնեն, այլ որ ամեն մարդ պարտական կլինի նրանց (խնամելու): Կարևոր է, ասում էին, որ աշխարհի կարգը չխանգարվի, այլ պետք է, որ բոլորն անխտիր ողորմած լինեն և զգուշությամբ տանեն նրանց կերակուրը ու նրանց կարիքները հոգան: Այսպես էլ շինեց, կազմակերպեց և հաստատեց:*

*Ուրիշ շատ տեսակ ողորմածություններ էլ սովորեցրեց աշխարհին և շատ հայրենական կարգեր ու կանոններ հաստատեց: Նա խրատ էր տալիս, որ միշտ պետք է նկատի ունենալ հարության հույսը, չկարծել, թե մարդու մահն անդառնալի է, թե նորից կենդանանալու հույս չկա. ուստի և պետք չէ մեռածի վրա անհուսությամբ լացուկոծ անել, անչափ ու անկարգ սուգ անել, այլ հույսով նկատի ունենալ Տիրոջ (երկրորդ) գալուստը և հարությամբ նորոգվելը, ուրեմն սպասել Տիրոջ գալստյանը, երբ ամեն մարդ հավիտենական հատուցում կստանա ըստ իր գործերի: Նաև խրատում էր, որ ամուսնության մեջ օրինավոր լինեն, որ ամուսնացածներն իրար չխաբեն, իրար դեմ դավ չսարքեն, հեռու մնան ազգակցական մերձավոր խառնակ ամուսնություններից, մանավանդ հարսների հետ մերձավոր ամուսնությունից և սրանց նմաններից: Եվ կանոն էր դնում՝ մեռած անասուն և արյուն չուտել, ամսական ժամանակ կնոջ չմերձենալ, որովհետև դրանք պիղծ են Տիրոջ առաջ:*

*(Նա դատապարտում էր) ննգությունը, մատնությունը, ագահությունը, ուրիշին նախանձելը, ցանկասիրությունը, զրկողությունը, արվամոլությունը, իգանալը, ըամբասանքը, մոլի հարբեցողությունը, որկրամոլությունը, հափշտակությունը, պոռնկությունը, թշնամուց*

*վրեժխնդրությունը, ստախոսությունը, թշնամությունը, անողորմածությունը, սուտ երդումը, արյունահեղ սպանությունը, պիղծ անասնամոլությունը, (երկրորդ) հարության հույս չունենալը, անհուսությամբ մեռելներին սգալը - այս բոլորը համարում էր միանման կորստյան խորխորատ: Եվ ամբողջ երկրին պատվիրում էր նա, հենց իրեն՝ թագավորին, մեծամեծներին և առհասարակ նրանց, որոնք ուրիշի վրա իշխանություն ունեին, որ գութ ունենան իրենց ծառաների, ստորադրյալների և աշակերտների նկատմամբ, սիրեն նրանց իբրև իրենց հարազատների, ապօրինի կերպով ու չափազանց հարկերով նրանց չնեղեն, հիշեցնելով, որ նրանց համար էլ Աստված կա երկնքում: Այսպես էլ ծառաներին պատվիրում էր հավատարիմ և հնազանդ լինել իրենց տերերին, հիշեցնելով նրանց, որ դրա համար վարձք կստանան Տիրոջից:*

*Եվ բոլոր եկեղեցիները նրա օրերում խաղաղություն ու նորոգություն գտան. ամբողջ Մեծ Հայքում եպիսկոպոսների պատիվը մեծացավ, եկեղեցիների կարգերը ծաղկեցին, լիովին պայծառացան, ամենայն վայելչությամբ հաստատվեցին կաթողիկե եկեղեցիների կարգերը, սուրբ պաշտամունքի կարգերը աճեցին, պաշտոնյաներն ավելացան: Եկեղեցու կարգերը շատացրեց շեն ու անշեն տեղերում, նույնպես կրոնավորների թիվը բազմացրեց:*

*Զանազան տեղերում, Հայաստանի բոլոր գավառներում հիմնեց դպրոցներ՝ հունարեն և ասորերեն լեզուներով: Շատ նեղվածների փրկում էր, գերության մեջ տառապողներին գերությունից ազատում էր՝ ոմանց քարոզելով Քրիստոսի ահը, և մյուսներին փրկանք տալով՝ գնում, ազատում էր ու իրենց տեղերը դարձնում: Այրիներին, որբերին, չքավորներին հանգիստ ու սնունդ էր ապահովում, աղքատները միշտ նրանով ուրախանում էին. իր սեղանատունն ու սեղանը միշտ բաց էին աղքատների, օտարականների ու հյուրերի համար: Եվ այնքան մեծ էր նրա աղքատասիրությունը, որ թեպետ բոլոր գավառներում աղքատանոցներ չինեց ու նրանց համար դարման նշանակեց, այնպես որ իրենց անկողիններից վեր կենալուց ավելի նեղություն չքաշեն, բայց և այնպես առանց նրանց սեղան չէին նստում, այլ կաղերը, կույրերը, հաշմանդամները, վերքոտները, խուլերը, տնանկները, կարոտյալները նրա հետ սեղան էին նստում ու կերակրվում: Եվ ինքը իր ձեռքերով բոլորին լվանում էր, օծում, (վերքերը) կապում, իր ձեռքով նրանց կերակուր էր բաժանում, իր բոլոր ունեցածը նրանց վրա էր ծախսում. բոլոր օտարականները նրա հովանու տակ դադար առած հանգստանում էին:*

*1. Աշտիշատը հայ մատենագրության մեջ հիշվում է նաև Հաշտիշատ ձևով: Գտնվում էր Տարոն գավառում: Հեթանոսական շրջանում եղել է կրոնական գլխավոր կենտրոնը. այստեղ են գտնվել Վահագնի, Անահիտի և Աստղիկի մեհյանները:*

*2. Ուրկանոցները հասարակական բնույթի հիմնարկներ էին, ուր հավաքում, պահում էին բորոտներին:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՆԵՐՍԵՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### Գիրք Գ

***Գլ. Ի.*** *Արշակի թագավորության երրորդ տարում հայոց եպիսկոպոսապետ եղավ Աթանագինեսի որդի Մեծ Ներսեսը[1]: (Աթանագինեսը) Հուսիկի որդին էր, սա Վրթանեսի որդին, իսկ այս վերջինը էր Սուրբ Գրիգորի որդին: Բյուզանդիայից Կեսարիա վերադառնալով՝ նա եկավ Հայաստան և իր հայրերի բոլոր ուղիղ կարգերը նորոգեց, և ավելի ևս, որովհետև ինչ բարեկարգություններ, որ նա տեսավ Հունաց աշխարհում[2], մանավանդ թագավորանիստ քաղաքում, նույնը սահմանեց և մեր երկրում: Նա եպիսկոպոսների և աշխարհականների ժողով գումարեց, կանոնական սահմաններով հաստատեց ողորմածությունը, արմատախիլ արեց անգթությունը, որ մեր երկրում ի բնե սովորական էր: Որովհետև բորոտները հալածվում էին իբրև օրենքով պիղծ ճանաչված մարդիկ, ուռուցներին էլ փախուստի էին ենթարկում, որպեսզի ախտը նրանցից ուրիշների վրա չփոխադրվի, նրանց կացարաններն անապատներն էին և ամայի տեղերը, նրանց ծածկույթը՝ քարերն ու մացառները, իրենց թշվառության մեջ նրանք ոչ ոքից մխիթարություն չէին գտնում: Բացի դրանցից, հաշմանդամները չէին խնամվում, անծանոթ հյուրեր չէին ընդունվում, օտարականները պաշտպանություն չէին գտնում:*

*Իսկ նա հրամայեց, որ ամեն մի գավառում շինեն աղքատանոցներ, առանձնացած անբնակ տեղերում, որպեսզի հունաց հիվանդանոցների նման մխիթարություն լինեն մարմնով վշտացածներին: Այս (հիվանդանոցների) վրա բաշխեց ավանները և ագարակները, որպեսզի իրենց արտերի արդյունքներից, արածող անասունների կթից ու բրդից բաժին հանեն և պարտավորաբար նրանց պետքերը հոգան հեռվից հեռու, իսկ նրանք դուրս չգան իրենց բնակության շենքերից:*

*Այս գործը նա հանձնեց Խադ անունով իր սարկավագին, որ Կարինի Մարգքից էր: Նույնպես սահմանում է, որ բոլոր գյուղերում իջևաններ չինվեն օտարականների համար, սնունդի տեղեր որբերի և ծերերի համար և խնամք չքավորների համար: Շինում է նաև անապատ և անմարդաբնակ տեղերում եղբայրանոցներ և մենաստաններ և մենակյացների համար խրճիթներ: Սրանց վրա հայր և վերահսկիչ է նշանակում Շաղիտային, Եպիփանին, Եփրեմին և Գինդին Սլկունյաց ցեղից և ուրիշ մի քանիսին:*

*Եվ նախարարական ցեղերի միջից վերացնում է այս երկու բանը. առաջին՝ խնամիությունը մերձավոր ազգականների միջև, որ գործադրում էին սեպուհական ազնվականության համար աչք տնկելով, և երկրորդ՝ որ մեռածների վրա ոճիրներ էին գործում հեթանոսական սովորությամբ:*

*Այնուհետև մեր երկրի մարդիկ արդեն բաբարոսների պես այլանդակված չէին, այլ քաղաքացիների նման պարկեշտացած:*

*1. Ներսես Պարթևը Հայաստանում կաթողիկոս է եղել 353-373 թվականներին:*

*2. Մովսես Խորենացու Պատմության թարգմանության մեջ սխալմամբ՝ «Հայաստանում»:*

## ԱՐՇԱԿԱՎԱՆԻ ՀԻՄՆԱԴՐՈՒՄՆ ՈՒ ԿՈՐԾԱՆՈՒՄՆ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Դ*

***Գլ. ԺԲ.*** *Այս ժամանակ թագավորն իր համար մի դաստակերտ շինեց Հովիտ կոչված Կոգ գավառում և իր իշխանության բոլոր գավառներին հրաման ուղարկեց. հրամայեց, որ ամեն տեղ մունետիկները կանչեն հրապարակներում, բոլոր գավառներում, բոլոր կողմերում հայտնեն թագավորական հրամանը, որ «Եթե մեկը մեկին պարտք է, եթե մեկը ուրիշին մի բանով վնասել է, թող բոլորը գան այդ դաստակերտը և ապահով կլինեն: Եթե մեկը (ուրիշի) արյուն է թափել, մեկին վնասել է, կինը տարել է, կամ պարտապան է, կամ մեկի գույքը գրավել է, կամ որևէ մեկից երկյուղ ունի, թող գա այնտեղ, նրա դեմ դատ ու պահանջ չի լինի: Եվ եթե մեկը մեկին մի բան պարտք է, և պարտատերը այդ տեղը գա (պահանջելու), նրան առանց դատի ու*

*արդարադատության բռնեն ու դուրս հանեն»:*

*Երբ թագավորից այս հրամանը դուրս եկավ, ապա այդտեղ հավաքվեցին բոլոր գողերը, ավազակները, արյունապարտները, մարդասպանները, ստախոսները, խաբեբաները, վնասարարները, գանձագողերը, զրկողները, դատի մեջ ստողները, զրպարտողները, կողոպտողները, հափշտակողները, ժլատները: Շատ հանցանքներ էին գործում և այնտեղ ապավինում: Շատ կանայք իրենց ամուսիններին թողնում էին ու այնտեղ ընկնում. շատ տղամարդիկ իրենց կանանց թողնում էին և ուրիշների կանանց առնելով այնտեղ էին ընկնում. շատ ծառաներ իրենց տերերի գանձերը հափշտակելով փախչում այնտեղ էին ընկնում. շատ ավանդառուներ իրենց մոտ պահեստի դրված ավանդները վերցնում այնտեղ էին ընկնում. ամբողջ երկիրը թալանում, ավերում էին: Թեպետև ամեն կողմից խիստ աղաղակ բարձրացավ, բայց դատ չկար, ոչ ոքի իրավունքը արքունիքից չէր պաշտպանվում: Այս պատճառով բոլոր մարդիկ վա՜յ տալով հառաչում էին. բոլորի բերանում ընդհանուր խոսք էր դարձել և միշտ ասում էին, թե «Իրավունքը մեռավ. եթե նա գոյություն ունենար, բայց կորած լիներ, կփնտրեինք, մի տեղ կգտնեինք նրան»:*

*Իսկ այն տեղը ավան ու քաղաք դարձավ, մեծացավ, բազմամարդացավ, ամբողջ հովիտը բռնեց: Արշակ թագավորը հրամայեց այդ դաստակերտի անունն իր անունով դնել Արշակավան: Նրա մեջ նաև թագավորական ապարանք շինեցին: Այնուհետև այլևս տիրոջից ամեննևին չէին վախենում, ամենքը զրկանքներ էին կրում այդ պատճառով տրտունջ, բողոք, աղաղակ երկինքն էին բարձրացնում:*

***Գլ. ԺԳ.** Արդ՝ երբ Ներսես հայրապետը Հայաստան վերադարձավ, վերահասու եղավ իր տեղապահի՝ Սուրբ Խադի գործերին և տեսավ, որ նա ճշմարտությամբ և ուղղությամբ է գործել, գնացել էր Տեր Աստծու ճանապարհով, ո՛չ աջ էր շեղվել և ո՛չ ձախ, ուստի մեծ գոհություն էր մատուցում Աստծուն, որ իր հոգևոր որդուն՝ Խադին, տեսավ այնպես, ինչպես ինքն էր կամենում: Նրան ընդունեց սիրով և կարոտով: Բայց երբ Խադից լսում էր թագավորի բոլոր անօրինությունները, չար գործերը, ծուռ ընթացքը, տրտմում, լացուկոծ էր անում, ողբում էր ծանր հեծեծանքով, մանավանդ Արշակավան քաղաքի պատճառով, որ շինվեց շատ մեղքերով, անօրինությամբ, չարությամբ և հափշտակությամբ:*

*Ապա Սուրբ Ներսես հայրապետը մտավ թագավորի մոտ, խոսեց նրա հետ և ասաց. «Ինչո՞ւ դու մոռացար Տիրոջը… Ինչո՞ւ թողեցիր նրա պատվիրանները, արարչին, որ ամեն ինչ ոչնչից ստեղծեց, որ*

*որբերի հայրն է, այրիների դատավորը, որ մեզ համար աղքատություն կրեց. նա որ աղքատներին անտես չի անում, այլ իր մարդասիրությամբ նրանց խնամում է: Աստված արդար դատավոր է, հզոր և երկայնամիտ: Նա բոլոր տառապյալներին լսում է և ոչ ոքի արհամարհանքն իր վրա չի վերցնում: Դու ինչպե՞ս և ինչի՞ց դրդված արհամարհեցիր նրա պատվիրանները. չէ՞ որ քո հայրն էլ այսպիսի ամբարշտության պատճառով կորավ: Իսկ դու դեռ չհիշեցի՞ր նրան, որ քո հոր մեղքերը չհիշեց և քեզ տվեց նրա տեղը, այսինքն՝ քո հոր թագն ու աթոռը: Դու քո Տեր Աստծու առաջ սկսեցիր անօրինություններ գործել, ամբարշտություն, անիրավություններ բոլորովին սոդոմացիների նման, և այս բաները դու հայտնապես պարծենալով պատմում ես: Ամբողջ երկիրը լալիս է, վա՜յ է կանչում այն զրկանքների և հափշտակությունների պատճառով, որոնցով դու կամեցար մեծանալ. դու չհագեցար քո ընդարձակ թագավորության հարստություններով, որ քեզ պարգևեց բոլորիս տեր Քրիստոսը:*

*Արդ՝ լսի՛ր, ինչ որ քեզ ասում եմ, և կատարի՛ր, որպեսզի կարողանաս քեզ փրկել Աստծու բարկությունից, և թշվառ Հայոց աշխարհն էլ քո պատճառով չկորչի. որովհետև ես երազ տեսա, որ Հայոց կորստական աշխարհի համար կորուստ և կործանում է պատրաստվում գալ: Դու հրաման տուր, որ այն տեղը քանդեն, քո ժողոված մարդկանց ցրիր, որ գնան, տարածվեն, սփռվեն իրենց տեղերը, գնան և ամենքին վերադարձնեն ինչ որ պարտք են, որպեսզի բարկության ու չարիքների խորքերը չընկնես և չկորչես: Իսկ քո գործած մեղքերի համար ամբողջ երկրին հրաման կտանք, որ քո փոխարեն պաս պահեն, աղոթք անեն, և մենք էլ քեզ հետ միասին ապաշխարության մեջ մտնենք, գուցե Տերը ների քո գործած անչափ մեղքերը: Եթե դու այն տեղին շատ ես փափագում, ես ինքս կշինեմ արդարությամբ և չեն կպահեմ քեզ համար:*

*... Հազիվ էր անցել երեք օր, որ Աստված Արշակավան գյուղաքաղաքը հարվածների ենթարկեց[1]: Մարդկանց և անասունների վրա սկսեցին դուրս գալ չարորակ պալարներ, որ ոմանք կոչում էին ժանտ[2]: Այս հարվածը երեք օրից ավելի չտևեց, որ (քաղաքը) անմարդացավ, մոտ քսան հազար ընտանիք կոտորվեց, մարդկանցից ոչ ոք կենդանի չմնաց, որովհետև բոլորը հանկարծակի կոտորվեցին, ոչնչացան. կոտորածն ընդհանուր էր:*

*1. Արշակավանի կործանումը տեղի է ունեցել մոտ 358 թվականին:*
*2. Սա ժանտախտի առաջին հիշատակությունն է հայ մատենագրության մեջ:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԱՐՇԱԿԱՎԱՆԻ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

***Գլ. ԻԷ.*** *Բայց Արշակն ավելի ևս հանդգնելով մի անմիտ գործ գործեց: Մասիս լեռան թիկունքում նա շինեց մի դաստակերտ՝ մեղավոր մարդկանց ժողովատեղի. և հրաման արձակեց, թե ով կարողանա այդտեղ ընկնել ու բնակվել, նրա վրա դատական օրենքը չի գործի: Անմիջապես ամբողջ հովիտը ծովացած լցվեց մարդկանց բազմությամբ. որովհետև ավանդառուներն ու պարտապանները, ծառաներն ու հանցագործները, գողերն ու մարդասպանները, ուրիշների կանանց փախցնողները և ուրիշ սրանց նմանները փախչում ապաստանում էին անտեղ,– և նրանց դեմ հարցաքննություն ու դատաստան չկար: Նախարարները շատ անգամ բողոքեցին, բայց Արշակը նրանց չլսեց այն աստիճան, որ նրանք մինչև [անգամ] Շապուհին դիմեցին: Եվ երբ Շապուհը Հունաստանից ետ էր դառնում, իր սպարապետներից մեկին հայ գնդով ուղարկեց, որ երբ հարմար լինի, Արշակին բռնի, բայց նա խուսափեց նրանից, փախավ Կովկասի կողմերը, վրացիների հետ միանալով:*

*Իսկ պարսից սպարապետը Հայաստան գալով՝ նախարարների օժանդակությամբ առնում է Անի ամրոցը, ավարում են այնտեղ պահված բոլոր արքունական գանձերը, այլև թագավորների ոսկորները, չգիտեմ՝ Արշակին նախատինք հասցնելու նպատակո՞վ, թե որևէ հեթանոսական հմայքի համար: Բայց հետո նախարարները խնդրեցին ետ ստացան (ոսկորները) և թաղեցին Աղցք ավանում, որ Արագած կոչված լեռան ստորոտում է: Որովհետև նրանք չկարողացան ջոկել հեթանոսների և հավատացյալների ոսկորները, քանի որ գերողները խառնել էին իրար հետ, ուստի արժան չհամարեցին թաղել սրբերի հանգստարանում՝ Վաղարշապատ քաղաքում:*

*Իսկ հայոց նախարարները հավաքվելով՝ դիմեցին թագավորական դաստակերտ Արշակավանի վրա, սրով կոտորեցին տղամարդկանց և կանանց, բացի ծծկեր երեխաներից, որովհետև նրանք յուրաքանչյուրը կատաղած էին իրենց ծառաների և վնասարարների դեմ: Այս բանը թեպետ իմացավ Մեծ Ներսեսը, բայց չկարողացավ կոտորածից առաջ հասնել, այլ հասավ վերջում, երբ կոտորվածների երեխաներին բաժանելով ուզում էին գերի տանել, ինչպես հեռավոր թշնամիների*



*Աղցք. Արշակունիների դամբարանը (IV դար)*

*երեխաների: Մեծ Ներսեսը նրանց ազատեց և հրամայեց քթոցներով կրել մի գոմ. նրանց համար սնուցիչներ և սնունդ նշանակեց: Հետո նրանք (մեծանալով) ավան կազմեցին, որ այս պատճառով կոչվեց Որթք (քթոցներ):*

## ՀԱՅ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ԱՐՇԱԿ II-Ի ՕՐՈՔ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ

*ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ*

### *Դպրություն Դ*

***Գլ. ԽԳ.*** *Այն ժամանակ Հայոց թագավորի դեմ ապստամբվեց մեծ նախարարներից մեկը Արծրունյաց ցեղից՝ Մերուժան անունով: Նա գնաց ներկայացավ պարսից Շապուհ թագավորին և երդումով ուխտ դրեց նրա հետ, որ առմիշտ նրա հպատակը կլինի: Նախ ուրացավ իր կյանքը, իր աստվածը, որովհետև հրաժարվեց քրիստոնեությունից... (Այնուհետև) պատրաստեցին առաջինից ավելի մեծ քանակությամբ պարսից զորք՝ Հայոց աշխարհն ասպատակելու. նրանց առաջնորդը եղավ չարագործ Մերուժանը: Մերուժանի առաջնորդությամբ Հայոց աշխարհը հանկարծակի կրակի և ավերածի մատնեցին. ոմանց փղերով ոտնակոխ էին անել տալիս, կանանց սայլերի ցցի վրա էին*

*հանում, Հայոց աշխարհի վերին գավառներն առնում, բոլոր բնակիչներին կոտորում էին:*

*Մինչդեռ Արշակ Թագավորը ուտեստի՝ կերակրվելու համար ստորին գավառների կողմերում էր՝ Անգեղտանը, պարսից զորքերը միջնաշխարհը քարուքանդ էին անում: Ապա հայոց Վասակ զորավարը զորք է հավաքում. նա կարողացավ այն ժամանակ կազմակերպել ու սարքավորել տասը հազար ընտիր ու քաջ հեծելազոր, նրանցով առաջ շարժվեց, փութով հասավ պարսից զորքի վրա: Երբ պարսից Թագավորի զորավարներն իմացան, թե հայոց Վասակ սպարապետը զորք է հավաքել իրենց դեմ, երկրում մնացածներին կողոպտեցին, գերի վերցրին ու շտապ-շտապ փախան իրենց աշխարհը: Նրանց հետամուտ եղավ Վասակ Մամիկոնյանը և հասավ, երբ նրանք անցնում էին Ատրպատականով: Պարսից Թագավորի զորքերը գերիները թողին ու փախան Մերուժանի հետ: (Հայոց) զորքերը գերությունից ազատեցին անչափ ու անթիվ բազմությունը և խաղաղությամբ դարձան Արշակ Թագավորի մոտ:*

***Գլ. ԻԴ.*** *Սրանից հետո տխրահռչակ Մերուժանը պարսից Շապուհ Թագավորին գրգռելով սաստիկ բարկացրեց Արշակ Թագավորի վրա: Ապա պարսից Շապուհ Թագավորը զորք է հավաքում, լրտեսներ է ուղարկում՝ Հայոց Արշակ Թագավորին դիտելու: Եվ մինչ Հայոց Արշակ Թագավորն իր զորքով Ատրպատականի սահմանների մոտ էր գտնվում, այդ կողմերից զգուշանալով – որովհետև այդտեղ էր նա սպասում պարսից զորքերին – սրանք Մերուժանին առաջնորդ բռնելով՝ ուրիշ կողմ չուռ տալով[1] ասպատակեցին Հայոց աշխարհը: Նրանք անցան Աղձնիքով, Մեծ Ծոփքով, Անգեղ տանով, Անձիտ գավառով, Շահունի Ծոփքով, Մզուր գավառով, Դարանաղիով, Եկեղյաց գավառով: Պարսից Շապուհ Թագավորն անթիվ զորքերով այս գավառները մտավ ու ծավալվեց հեղեղի նման:*

*Կրակի ու ավերածի էին մատնում երկիրը, անթիվ մարդիկ էին կոտորում իրենց սրերով, կանանց ու երեխաներին սայլերի ցցերի վրա էին հանում, մի մասն էլ կամերի տակ էին գցում, կալսել էին տալիս, տղամարդկանց բազմությունը գցում էին փղերի ոտքերի տակ՝ կոխան լինելու և անթիվ քանակությամբ մանր երեխաների գերի էին տանում: Շատ ամրոցներ քանդում էին, շատ ամուր բերդեր ավերում: Նրանք առան Տիգրանակերտ մեծ քաղաքը, որ Աղձնիք գավառում էր, բդեշխի իշխանության մեջ, և այնտեղից քառասուն հազար ընտանիք անմիջապես գերի քշելով՝ իրենք արշավեցին Մեծ Ծոփք գավառը: Այնտեղ էլ կային բերդեր, որոնց մի մասը գրավեցին, իսկ մի*

*մասը չկարողացան առնել: Այնտեղից եկան պաշարեցին Անգեղ ամուր բերդը Անգեղտան գավառում, որովհետև այնտեղ կային Հայոց շատ Արշակունի թագավորների գերեզմաններ և վաղուց ի վեր այնտեղ ամրացված էին շատ գանձեր: Գնացին պաշարեցին բերդը և երբ, տեղի ամրության պատճառով, չկարողացան առնել, թողին ու գնացին: Շատ բերդեր էլ թողին անցան, որովհետև չէին կարողանում այն ամրոցների հետ կռվել: Նրանց ձեռքն անցավ միայն Անի բերդը Դարանաղի գավառում, որովհետև չարագործ Մերուժանը մի հնարք մեքենայեց այդ ամուր բերդի դեմ: Վեր էին բարձրանում, պարիսպները կործանում էին և բերդից անհամար գանձեր էին դուրս բերում: Բաց էին անում Հայոց նախկին թագավորների, քաջ Արշակունիների գերեզմանները և թագավորների ոսկորները գերի էին տանում: Չկարողացան բանալ միայն Սանատրուկ թագավորի շիրիմը՝ նրա հսկայակառույց, հսկայական պինդ ու ճարտար շինվածքի պատճառով: Այնտեղից հեռանալով ուրիշ կողմ, ասպատակեցին, առաջ շարժվելով դեպի Բասենի կողմերը. մտադրվում էին թիկունքից հարձակվել Հայոց թագավորի զորքերի վրա:*

*Երբ այս ամենը կատարվում էր, գուժկան եկավ Արշակ թագավորի մոտ. նրան հայտնեցին, թե՝ «Դու այդտեղ Ատրպատականում նստած՝ թշնամուն սպասում ես դիմացից, իսկ թշնամիները, քո թիկունքն անցնելով, երկիրը կոտորեցին և հիմա գալիս են քեզ վրա»: Երբ այս լսեցին Հայոց Արշակ թագավորը և նրա Վասակ զորավարը, զորահանդես կազմեցին: Վասակ զորավարի ձեռքի տակ այդ ժամանակ պատրաստ գտնվեց պատերազմական գործի պիտանի մոտ վաթսուն հազար մարդ, ընտիր պատերազմողներ, որոնք միաբան, միասիրտ, հոժարակամ գնում էին պատերազմի, որպեսզի հասնեն ու պատերազմեն իրենց կանանց ու որդիների համար, իրենց կյանքը զոհեն երկրի համար, իրենց բնակած տեղերի համար, կռվեն իրենց եկեղեցիների համար, սուրբ եկեղեցիների սպասավորների համար, իրենց հավատի ու Աստծո համար, իրենց բնիկ տերերի՝ Արշակունիների համար: Որովհետև նույնիսկ թագավորների ոսկորներն ու բազմաթիվ ժողովուրդ տեղահան արված՝ օտարություն էին քշված:*

*Ապա Վասակ սպարապետն իր վաթսուն հազարով առաջ շարժվեց. իր տունը թողեց Արշակ թագավորին սպասավորների հետ Մարաց աշխարհում մի ամուր տեղում, իսկ ինքը եկավ հասավ Հայաստանի միջնաշխարհը՝ Այրարատյան գավառը. այնտեղ գտնում է պարսից զորքերը, որոնք այնտեղ կուտակվել, բանակ էին դրել մեծ բազմությամբ, ինչպես ավազը ծովի ափին՝ բանակած Այրարատյան*

*գավառում: Վասակն իր հետ եղած գնդով այնտեղ հասնելով՝ գիշերով անսպասելի կերպով գրոհ է տալիս պարսից թագավորի բանակի վրա: Եվ տեղնուտեղը սրի են անցկացնում պարսից բոլոր զորքերը. միայն թագավորը հազիվ ճողոպրում, փախչում է մի ձիով: Մնացածներին հալածելով, փախցնում են իրենց սահմաններից դուրս և նրանցից անթիվ ու անհամար ավար են խլում, որ չափ ու հաշիվ չունեին: Նրանց բոլորին առհասարակ կոտորեցին իրենց սրերով, խլեցին նրանցից իրենց թագավորների ոսկորները, որ պարսիկները գերի էին տանում Պարսից աշխարհը: Որովհետև նրանք, ըստ իրենց հեթանոսական կրոնի՝ ասում էին. «Նրա համար ենք մենք հայոց թագավորների ոսկորները մեր աշխարհը տանում, որ այս աշխարհի թագավորների փառքը, բախտն ու քաջությունը այստեղից թագավորների ոսկորների հետ մեր աշխարհը փոխադրվեն»: Արդ՝ Վասակը խլում է նրանցից Հայաստան աշխարհի բոլոր գերիները, իսկ թագավորների ոսկորները, որ նրանցից Վասակը խլեց, տարան, թաղեցին Աղձք կոչված ամուր գյուղում՝ Այրարատ գավառում, որ գտնվում է Արագած մեծ լեռան նեղ ու դժվարամուտ խորշերից մեկում: Իսկ իրենք հոգ տարան աշխարհը խաղաղեցնելու, բարեկարգելու, գերիները տեղավորելու, այրածն ու ավերածը նորոգելու: Բայց այս անգամ էլ չարագործ Մերուժանը պարսից թագավորի հետ փախչում, ազատվում է: Այնուհետև Արշակ թագավորը Վասակ զորավարի հետ պահպանում է երկիրը, սահմանագլխի երկու դռներն[2] զգուշությամբ պահելով՝ որքան ժամանակ որ կենդանի էին:*

*1. Այսինքն՝ այլ ուղղությամբ:*

*2. Նկատի ունի Ատրպատականն ու Աղձնիքը, որտեղից պարսիկները մտնում էին Հայաստան:*

## ԱՄՄԻԱՆՈՍ ՄԱՐԿԵԼԼԻՆՈՍԸ ԿՈՍՏԱՆԴԻՈՍ ԿԱՅՍԵՐ ԵՎ ԱՐՇԱԿ II-Ի ՄԻՋԵՎ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Ամմիանոս Մարկելլինոսը IV դարի հույն հեղինակ է: Մասնակցել է Հուլիանոս կայսեր Արևելք և Գալլիա ձեռնարկած արշավանքներին: Երկար տարիներ ապրել է Անտիոքում և Հռոմում: Գրել է լատիներեն 31 հատորից բաղկացած պատմական մի աշխատություն՝ «Գործունեություններ» (Res gestae) վերնագրով՝ նպատակ ունենալով այն***

*դարձնել Տակիտոսի «Տարեգրություններ» և «Պատմություն» աշխատությունների շարունակությունը: Մեզ են հասել հեղինակի այդ աշխատության միայն 18 հատորները, որոնց մեջ նկարագրված են կայսրության պատերազմները պարսիկների, գոթերի և այլ ժողովուրդների դեմ: Հեղինակը նկարագրված իրադարձություններին մեծ մասամբ ականատես է:*

*Ներկա թարգմանության համար օգտագործված է Յու. Կուլակովսկու և Ա. Սոննիի ռուսերեն թարգմանությունը (տե՛ս* **Аммиан Марцеллин, История, вып. 1-3, Киев,** *1906–1908): Ամմիանոսից ստորև բերված հատվածները հայերեն է թարգմանել Ա. Գ. Աբրահամյանը:*

## ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### Գիրք XX

*Գլ. 11, § 1–3. Այդ ժամանակ[1] Կոստանդիոսը, երբ գտնվում էր Կեսարիա քաղաքում, իր մոտ կանչեց հայոց Արշակ թագավորին[2], մեծ պատվով ընդունեց նրան և ամեն ջանք գործ դրեց հորդորելու, որ նա մնա մեր հավատարիմ բարեկամը: Կոստանդիոսը լսել էր, որ պարսից թագավորը խաբեբայության, սպառնալիքի և նենգության ճանապարհով փորձեր է անում, որպեսզի հարկադրի Արշակին հրաժարվելու Հռոմի բարեկամությունից և ամուր կապի իր հետ:*

*Արշակը բազմիցս երդվեց, որ ինքն ավելի շուտ վերջ կտա իր կյանքին, քան կփոխի իր մտադրությունը: Եվ նա վերադարձավ առատաձեռն պարգևատրված, ինչպես ինքը, այնպես և իր հետ տարած շքախումբը: Արշակն այնուհետև չէր համարձակվում դրժել իր տված խոստումը: Կոստանդիոսից նա ստացել էր բազմազան շնորհումներ, որոնցից ամենամեծն այն էր, որ նրան կին էր տվել Օլիմպիային՝ անձնապահապետ Աբլաբիոսի դստերը, որն առաջներում իր Կոստաս[3] եղբոր նշանածն էր եղել:*



**Կոստանդիոս կայսր**

*1. Այսինքն՝ 360 թվականին:*

*2. Խոսքը հայոց Արշակ II թագավորի մասին է:*

*3. Սա Կոստանդիոս կայսեր (337–361) կրտսեր եղբայրն էր, նրա կայսերակիցը (337–350):*

# ԱՄՄԻԱՆՈՍԸ 363 ԹՎԱԿԱՆԻ «ԱՄՈԹԱԼԻ» ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍԻՆ

## ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### *Գիրք XXV*

*Գլ. 7, § 9-12. (Շապուհ) Թագավորը համառորեն պահանջում է, որ իրեն վերադարձվեն, ինչպես ինքն է ասում, այն երկրամասերը, որոնք խլվել էին Մաքսիմիանոսի[1] ժամանակ: (Բանակցությունների ընթացքում) սակայն պարզվեց, որ նա պահանջում է Անդրտիգրիսյան հետևյալ հինգ գավառները՝ Աղձնիքը, Մոկքը, Ծավդեքը, Ռեհիմեննեն (Հերը և Զարևանդը) ու Կորդուքն՝ իրենց 15 ամրոցների հետ միասին: Բացի այդ (պահանջում էր) Մծբին, Սինգարա քաղաքները և Կաստրա-Մավրորումը, որն իր դիրքով կարևոր ամրություն էր:*

*Մեզ համար ավելի լավ էր տասն անգամ կռվել, քան ընդառաջել այդ պահանջներից որևէ մեկին: Սակայն վախկոտ կայսրի վրա ազդեցություն գործեց քծնողների խումբը, որոնք տալիս էին ահեղ Պրոկոպիոսի[2] անունը և պնդում, որ եթե կայսրը չշտապի վերադառնալ, ապա Պրոկոպիոսն իմանալով Հուլիանոսի[3] մահը, դյուրությամբ, առանց դիմադրության հանդիպելու, պետական հեղաշրջում կկատարի թարմ ուժերով, որոնք գտնվում են նրա հրամանատարության ներքո:*

*Այս չարամիտ խոսակցություններն այնքան հաճախ էին կրկնվում, որ Հովիանոսն առանց տատանվելու տվեց այն ամենն, ինչ որ պահանջում էին պարսիկները և դժվարությամբ պայմանագրում միայն նշվեց, որ Մծբինը և Սինգարան պարսիկների իշխանության տակ անցնեն առանց բնակիչների և թույլ տրվի հռոմեացիներին հանձնված ամրություններից հեռանալ սահմանապահ պահակակետերի պաշտպանության ներքո:*



***Հուլիանոս Ուրացող***

*Բացի այդ պայմանագրում արվեց շատ ավելի ծանր ուխտադրանց մի հավելում, ըստ որի, այդ համաձայնությունից հետո, այլևս օգնություն չպիտի տրվեր մեր մշտական և հավատարիմ բարեկամ*

*Արշակին ընդդեմ պարսիկների, եթե անգամ նա այդ մեզանից խնդրելու լիներ: Սրանում կրկնակի դիտավորություն կար. նախ պատժել այն մարդուն, որը կայսեր հանձնարարությամբ ավերել է Հիլիոկոմը և ապա սպասել հարմար ժամանակի՝ առանց դժվարության հարձակվելու Հայաստանի վրա:*

*Եվ դրա հետևանքով էր, որ հետագայում, երկպառակությունների և խռովությունների ժամանակ, այս Արշակը կենդանի գերի վերցվեց պարսիկների կողմից, և խլվեց Հայաստանից ընդարձակ մի երկրամաս, որը սահմանակից էր Մեդիային: Գրավվեց նաև Արտաշատ քաղաքը:*

*1. Խոսքը Մաքսիմիանոս կայսեր (286-305) մասին է:*

*2. Հռոմեական նշանավոր զորավար:*

*3. Խոսքը Հուլիանոս կայսեր (355-363) մասին է, որը հաջող պատերազմ էր մղում Պարսկաստանի դեմ, սակայն նրա զոհվելուց հետո գահ բարձրացած Հովիանոս կայսրը ոչ միայն հրաժարվեց նրա ձեռքբերումներից, այլև պարտավորվեց չօգնել Մեծ Հայքին: Այդ պայմանագիրը հենց հռոմեական պատմագրության մեջ անվանվեց «ամոթալի»:*



***Հովիանոս կայսր***

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ՀԱՅ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԱՐՇԱԿ II-Ի ԲԱՆՏԱՐԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Դ*

***Գլ. ԾԴ.*** *Սրանից հետո պարսից Շապուհ թագավորը դարձյալ (պատգամ) ուղարկեց Հայոց Արշակ թագավորին և ասաց. «Եթե ես և դու իրար հետ հաշտ ենք, ապա եկ, միմյանց հետ տեսակցենք և այնուհետև իբր հայր և որդի լինենք միմյանց, իսկ եթե չես ուզում ինձ տեսնել, ուրեմն պատերազմ ես ուզում մեր երկուսի միջև»: Արշակը նրանից խնդրեց ուխտի հավատարիմ երդում, որ անկասկած լինելով գնա: (Շապուհը) պարսից թագավորության հավատարիմ երդման օրինակով բերել տվեց աղ, կնքեց վարազագիր մատանիով և ուղարկեց (Արշակին, ասելով), որ եթե այդ երդումից հետո էլ չգա, ապա թող պատրաստվի պատերազմի:*

*Երբ Հայոց աշխարհի բոլոր մարդիկ այս տեսան ու լսեցին, ապա ստիպեցին, բռնադատեցին, չտապեցրին իրենց Արշակ թագավորին,*

*որ վեր կենա, գնա, ներկայանա պարսից Շապուհ թագավորին: Այնուհետև հայոց Արշակ թագավորը կամա-ակամա վեր կացավ վերցրեց իր հետ հայոց զորավար սպարապետ (Վասակին), իր դայակին, ճանապարհ ընկավ Հայոց աշխարհից Պարսից աշխարհը, պարսից Շապուհ թագավորի մոտ. գնաց, ներկայացավ պարսից Շապուհ թագավորին: Երբ նրանց տեսան, երկուսին էլ՝ Արշակ թագավորին և Վասակ սպարապետին բռնեցին և ազատ պահում էին ազնվական թիկնապահ զորքերի մեջ: Եվ Շապուհ թագավորը կանչեց Արշակ թագավորին ու խիստ նախատեց նրան իբրև իր ծառայի, իսկ նա նրա առաջ իրեն հանցավոր և մահապարտ ճանաչեց: Դրանից հետո նրան դարձյալ թիկնապահների գնդին հանձնեցին, որ պահեն:*

***Գլ. ԾԴ.*** *Ապա պարսից Շապուհ թագավորը կանչում է վհուկներին, աստղահմաններին և քավդյաններին[1], նրանց հետ խոսում է և ասում. «Ես շատ անգամ կամեցա սիրել Հայոց Արշակ թագավորին, բայց նա ինձ միշտ անարգեց: Ես նրա հետ խաղաղության դաշն կապեցի, և նա երդվեց քրիստոնեական կրոնի գլխավոր (սրբության) վրա, որին Ավետարան են ասում. նախ այն երդումը դրժեց... Որովհետև հայոց Արշակ թագավորը ահա երեսուն տարի է, որ Արյաց հետ պատերազմ է մղում, և ոչ մի տարի մենք չկարողացանք հաղթել, իսկ այժմ ինքն իր ոտքով ելել եկել է ինձ մոտ: Բայց եթե գիտենայի, թե այսուհետև նա կմնա իմ պայմանին և հնազանդության անկեղծ ուխտով, ապա շատ մեծարանքներով նրան խաղաղությամբ կուղարկեի իր աշխարհը»:*

*Քավդյաները նրան պատասխան տվին և ասացին. «Այսօր մեզ ժամանակ տուր, վաղը քեզ կպատասխանենք»: Հաջորդ օրը բոլոր քավդյաներն ու աստղահմանները հավաքվեցին եկան և ասացին թագավորին. «Հիմա որ Հայոց Արշակ թագավորը եկել է քեզ մոտ, ինչպե՞ս է քեզ հետ խոսում, ի՞նչ լեզու է բանեցնում կամ ինչպե՞ս է իրեն պահում»: Թագավորն ասաց. «Նա իրեն համարում է ինչպես մեկը իմ ծառաներից. ուզում է իմ ոտքի հողը դառնալ»: Նրանք ասացին թագավորին. «Դե՛, արա ինչ որ քեզ ասում ենք. նրանց այստեղ պահիր, մարդիկ ուղարկիր Հայոց աշխարհը, բերել տուր այնտեղից՝ Հայաստանի սահմաններից մոտ երկու բեռ հող և մի ամանով ջուր: Հետո հրամայիր, որ քո սենյակի հատակի կեսի վրա շաղ տան Հայաստանից բերած հողը, ապա դու ինքդ հայոց Արշակ թագավորի ձեռքից կբռնես, նախ կտանես սենյակի այն տեղը, որտեղ բնական գետինն է, և նրան հարցուփորձ կանես: Հետո նրա ձեռքը բռնած, հայկական հող շաղ տված տեղը կտանես և կլսես թե ինչ է խոսում և*

*այն ժամանակ կիմանաս, թե երբ նրան արձակելու լինես Հայաստան, քո ուխտն ու դաշինքը կպահի՞, թե՞ ոչ: Որովհետև եթե հայկական հողի վրա խիստ լեզվով խոսի, իմացի՛ր, որ Հայոց աշխարհը հասնելուն պես հենց նույն օրը նույն լեզուն կբանեցնի, նույն պատերազմը կնորոգի քեզ հետ, նույն ճակատամարտերը, նույն թշնամությունը կշարունակի»:*

*Պարսից թագավորը քավդյաներից այս լսելով՝ մարդիկ ուղարկեց Հայաստան արագավազ ուղտերով հողի և ջրի, որ գան և նրա համար պարզեն հմայքը: Քիչ օրերից հետո եկան ու բերին այն, ինչի որ նա նրանց ուղարկել էր: Ապա Շապուհ թագավորը հրաման է տալիս իր սենյակի հատակի մի կեսի վրա շաղ տալ Հայաստանից բերած հողը և վրան ջուր լցնել, իսկ մյուս կեսը՝ թողնել բնիկ երկրի նույն հողը: Եվ Հայոց Արշակ թագավորին բերել տվեց իր առաջ ու հրամայեց մյուս մարդկանց հեռացնել և նրա ձեռքից բռնած ճեմելով շրջում էր: Սենյակում երթևեկելիս, երբ ճեմում էին պարսկական հողի վրա, ասաց նրան. «Արշակ թագավոր Հայոց, դու ինչո՞ւ ինձ թշնամի եղար. ես քեզ որդու նման սիրեցի, կամեցա աղջիկս քեզ կնության տալ և քեզ ինձ որդի դարձնել, իսկ դու իմ դեմ խստացար, ինքնակամ, հակառակ իմ կամքի, ինձ թշնամի դարձար, և ահա ամբողջ երեսուն տարի է ինձ հետ պատերազմեցիր»:*

*Արշակ թագավորն ասում է. «Մեղանչեցի և հանցավոր եմ քո առաջ. որովհետև ես եկա, քո թշնամիներին հաղթեցի ու կոտորեցի և հույս ունեի քեզանից կյանքի պարգև ստանալ. բայց իմ թշնամիներն ինձ մոլորեցրին, քեզանից վախեցրին և փախչել տվին: Եվ երդումս, որով քեզ երդվեցի, ինձ քո առաջը բերեց, ու ահա եկա քո առաջ, և ահա ես՝ քո ծառան, քո ձեռքում եմ. ինչպես ուզում ես վարվիր ինձ հետ, եթե կամենում ես սպանիր, որովհետև ես՝ քո ծառան, շատ հանցավոր եմ քո առաջ, մահապարտ եմ»:*

*Շապուհ թագավորը նրա ձեռքից բռնած շրջում էր ճեմելով. անմեղ ձևանալով նրան բերում էր հայկական հող շաղ տված հատակի վրա: Իսկ երբ (Արշակը) այն տեղն էր հասնում, հայկական հողի վրա ոտք էր դնում, սաստիկ ըմբոստանալով, հպարտանալով, խոսքը փոխում էր, սկսում էր խոսել և ասել. «Հեռո՛ւ ինձանից, չարագործ ծառա, որ տերերիդ վրա տեր ես դարձել, և ես չեմների քեզ ու քո որդիներին իմ նախնիների վրեժը և Արտավան թագավորի[2] մահը: Որովհետև այժմ դուք՝ ծառաներդ, մեր՝ ձեր տերերի, բարձն եք հափշտակել, բայց ես չեմ թույլ տա այդ, մինչև դարձյալ մենք մեր տեղը չգրավենք»:*

*(Շապուհը) դարձյալ նրա ձեռքից բռնած տանում է պարսկական հողի վրա. այն ժամանակ (Արշակը) զղջում էր ասածների համար, խոնարհվում էր, նրա ոտքերն էր ընկնում. սաստիկ ափսոսում, զղջում էր իր ասած խոսքերի համար: Իսկ երբ ձեռքից բռնած տանում էր հայկական հողի վրա, առաջվանից ավելի խիստ էր խոսում: Նորից հեռացնում էր այդ հողի վրայից, սկսում էր խոսքերով ապաշխարել: Առավոտից մինչև երեկո շատ անգամ փորձեց նրան, որ երբ հայկական հող շաղ տված հատակի վրա էր տանում, խստանում, ամբարտավանանում էր, իսկ հենց որ կանգնում էր հատակի բուն գետնի վրա, զղջում էր:*

*Այն ժամանակ պարսից Շապուհ թագավորը հրաման է տալիս բերել շղթաներ և գցել Արշակի պարանոցը, իսկ ոտքերին և ձեռքերին դնել կապանքներ և տանել նրան Անդմըշն բերդը, որին ասում են Անհուշ բերդ[3], և կապած պահել այնտեղ մինչև մեռնի:*

*Հաջորդ օրը Շապուհ թագավորը հրամայեց իր առաջը բերել Վասակ Մամիկոնյանին՝ Մեծ Հայքի զորավար-սպարապետին: Սկսեց նրան անարգել. որովհետև փոքր էր մարմնով, պարսից Շապուհ թագավորն ասաց նրան. «Աղվե՛ս, այդ դո՞ւ էիր այն խանգարիչը, որ այսքան տարի մեզ չարչարեցիր, դո՞ւ էիր, որ այսքան տարի կոտորում էիր արիներին. հիմա ինչպե՞ս ես, որ ես քեզ աղվեսի մահով սպանեմ»: Վասակը պատասխան տալով ասաց. «Այժմ դու ինձ տեսնելով մարմնով փոքր, իմ մեծության չափը չզգացի՞ր, որովհետև մինչև այժմ ես քեզ համար առյուծ էի, իսկ այժմ՝ աղվե՞ս: Բայց մինչ ես Վասակն էի, որ հսկա էի. մի ոտքս մի լեռան վրա էր, մյուս ոտքս՝ մի այլ լեռան վրա, երբ աջ ոտքիս վրա էի հենվում, աջ լեռն էի գետին տանում, երբ ձախ ոտքիս վրա էի հենվում, ձախ լեռն էի գետին տանում»: Շապուհ թագավորը հարցրեց և ասաց. «Դե ասա իմանանք, այդ ի՞նչ լեռներ են, որ դու գետին էիր տանում»: Վասակն ասաց. «Երկու լեռներից մեկը դու էիր՝ մյուսը՝ հունաց թագավորը. քանի որ աստված հաշտ էր մեզ հետ, քեզ էլ էի գետին տանում, հունաց թագավորին էլ, քանի որ մեր հոր՝ Ներսեսի օրհնությունը մեզ վրա էր, և աստված մեզ ձեռքից չէր թողել: Քանի որ մենք նրա խոսքը լսում էինք և նրա խրատով էինք շարժվում, կարողացանք քեզ խրատ տալ, մինչև որ մենք ինքներս բաց աչքերով խորխորատի մեջ ընկանք: Հիմա ինչ ուզում ես արա»: Ապա պարսից թագավորը հրամայեց՝ հայոց Վասակ զորավարի մորթը հանել, խոտով լցնել և տանել նույն Անդմըշն բերդը, որ Անհուշ է կոչվում, որտեղ բանտարկեցին և Արշակ թագավորին:*

*1. Այսինքն՝ գուշակներին:*

*2. Նկատի ունի պարթևների վերջին թագավոր Արտավան Արշակունուն (213-227), որին սպանեցին Սասանյանները:*

*3. Անհուշ բերդը կամ պարսկերենով Անդմըշնը թարգմանվում է «Մոռացության բերդ»: Ուսումնասիրողներից ոմանք այն նույնացնում են Խուժիստանի Անդիմիշկ ամրոցի հետ:*

## ԱՄՄԻԱՆՈՍ ԱՐՇԱԿ II-Ի ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### Գիրք XXVII

*Գլ. 12, § 1-3. Պարսից երկարակյաց Շապուհ թագավորը, որն իր գահակալության առաջին տարիներից սկսած հակում ուներ հափշտակության, Հուլիանոս կայսեր մահվանից և ամոթալի խաղաղության պայմանագիրը կնքելուց հետո, որոշ ժամանակ դեռ պահպանում էր բարեկամությունը մեզ հետ: Սակայն իր ծերության թեքված տարիքում, հանկարծ ոտքի տակ տալով Հովիանոսի հետ կնքած պայմանագրի պայմանները, ցանկանալով իր գերիշխանությանը ենթարկել Հայաստանը, սկսեց ձեռք մեկնել Հայաստանին այն պատճառաբանությամբ, որ իբրև թե պայմանագիրն արդեն կորցրել է իր ուժը: Սկզբում նա գործ դրեց տարբեր տեսակի խարդավանքներ, սակայն բնակչության կողմից հանդիպելով դիմադրության, սկզբից մերթ դավով և բռնությամբ նեղում էր երկիրը և մերթ աշխատում իր կողմը թեքել նախարարների և ազնվականների, երբեմն ավազակաբար հարձակումներ գործում երկրի վրա: Հետո, գործի դնելով հրապուրանք և երդմնազանցություն, նա կարողացավ ձեռք գցել Հայոց Արշակ թագավորին:*

*Եվ Շապուհը Արշակին մի անգամ հրավիրելով խնջույքի, կարգադրեց նրան տանել գաղտնի դռնով, հանել նրա աչքերը, շղթայել արծաթյա շղթայով, որը նրանց մոտ ավելի պատվավոր մարդկանց պատժի համար համարվում էր դատարկ մխիթարության միջոց, ապա աքսորեց Ագաբանա անունով բերդը, ուր նա, զանազան տանջանքներից հետո մահապատժի ենթարկվեց:*

## ԱՐՇԱԿ II-Ի ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Ե*

*Գլ. Է. Այն ժամանակները դեռևս կենդանի էր Հայոց Արշակ թագավորը պարսից թագավորության իշխանության երկրում՝ Խուժաստանի կողմերում, Անդմըշն բերդում, որին ասում են Անհուշ բերդ: Այս ժամանակ պարսիկները դադարեցրին պատերազմները հայերի հետ, որովհետև քուշանաց Արշակունի թագավորը, որ նստում էր Բալխ[1] քաղաքում, պատերազմ սկսեց պարսից Շապուհ թագավորի դեմ, որ Սասանի տոհմից էր: Եվ Շապուհ թագավորը պարսից բոլոր զորքերը գումարեց և տարավ նրա դեմ պատերազմելու, նույնպես և Հայոց աշխարհից տարած գերությունից բոլոր հեծելազորքն իր հետ պատերազմի տարավ, մինչև անգամ Հայոց Արշակ թագավորի ներքինուն: Հայոց Արշակ թագավորի այդ ներքինին հավատարիմ պաշտոնյա էր, մեծ իշխանության տեր, շատ սիրված ու պատիվների արժանացած. նրա անունն էր Դրաստամատ:*

*Երբ քուշանաց թագավորի և պարսից թագավորի միջև պատերազմ սկսվեց, քուշանների զորքերը շատ նեղեցին պարսից զորքերին, շատերին կոտորեցին պարսից զորքերից, շատերին ձերբակալեցին և մյուսներին հալածեցին, փախուստի մատնեցին: Իսկ Դրաստամատ ներքինին, որ Հայոց Տիրան թագավորի և նրա որդու՝ Հայոց Արշակ թագավորի տարիներին իշխում էր Անգեղտան գավառի վրա, հավատարմությամբ պահում էր Անգեղ բերդի գանձերը, նույնպես և բոլոր արքունական բերդերը, որ գտնվում էին այն կողմերում: Նույնպես և Ծոփաց աշխարհում Բնաբեղ բերդում եղած գանձերը նրա տեսչության տակ էին և նրա բարձը բոլոր նախարարների բարձերից վեր էր: Եվ որովհետև այս պաշտոնը և Հայր կոչված մարդպետությունը ներքինիներին էին հանձնվում Արշակունյաց թագավորության ամենահին ժամանակներից ի վեր, ուստի այս ներքինի Դրաստամատին՝ Անգեղտան իշխանին էլ գերի էին տարել Պարսկաստան այն ժամանակ, երբ Հայոց Արշակ թագավորին բռնեցին:*

*Այս Դրաստամատը պատահեց այն ճակատամարտում, որի մեջ քուշանները հաղթեցին պարսից Շապուհ թագավորին: Դրաստամատն այնտեղ անպատմելի քաջություններ գործեց, Շապուհ թագավորի համար անչափ կռվեց, որ կարողացավ նրան մահից ազատել և քուշաններից շատերին կոտորեց և շատ ախոյանների գլուխներ բե-*

*րեց նրա առջև: Պարսից Շապուհ թագավորին էլ փրկեց, երբ նրան պատերազմի խառնուրդի մեջ թշնամիները շրջապատել ու նեղն էին գցել: Իսկ երբ պարսից Շապուհ թագավորը դարձավ, եկավ Ասորեստան, մեծ շնորհակալություն հայտնեց ներքինի Դրաստամատին նրա ծառայությունների համար. և ասաց նրան պարսից Շապուհ թագավորը. «Խնդրի՛ր դու ինձանից, ինչ որ ուզում ես, քո խնդրածը կտամ, չեմ մերժի»: Դրաստամատը ասաց թագավորին. «Ես քեզանից ոչինչ չեմ ուզում, բացի միայն նրանից, որ հրաման տաս ինձ՝ գնամ իմ իսկական տիրոջը՝ Հայոց Արշակ թագավորին տեսնեմ: Եվ միայն մի օրվա համար, երբ ես նրա մոտ գնամ, հրաման տուր նրան կապանքներից արձակել, և ես իրավունք ունենամ լվանալ նրա գլուխը, օծել, ազնիվ զգեստ հագցնել, նրա համար սեղան պատրաստել, նրա առաջ խորտիկներ դնել, գինի տալ և ուրախացնել նվագարաններով. ճիշտ մի օր»:*

*Շապուհ թագավորն ասաց. «Դժվար բան խնդրեցիր, որովհետև այն ժամանակից ի վեր, որ պարսից թագավորությունը կանգուն է և այն բերդը կոչվել է Անհուշ, չի եղել որևէ մարդ, որ համարձակված լինի թագավորներին հիշեցնել, թե թագավորները որևէ մեկին այնտեղ բանտարկել են, չի հիշատակվել որևէ մարդ, որին բանտարկել են այն բերդում, ուր մնաց թագավոր մարդը և իմ հավասարը՝ հակառակորդը, որ կապված է այն բերդում: Այնինչ դու անհանգստացրիր մեզ: Դու ահա մահդ աչքդ առար և հիշեցրիր Անհուշը՝ անհիշելին, որ Արյաց թագավորության մեջ սկզբից ի վեր չի պատահել այսպիսի բան: Բայց որովհետև մեծ է քո՝ ինձ ցույց տված ծառայությունը, թող կատարվի խնդիրքդ, գնա՛, ինչ որ խնդրեցիր, տալիս եմ: Բայց դու պետք է քո սեփական օգուտը մտածեիր, երկրներ, գավառներ կամ գանձեր խնդրեիր: Բայց երբ դու այդ խնդրեցիր, թող այդ բացառություն լինի Արյաց թագավորության օրենքից: Գնա՛, քեզ տվի, ինչ որ դու ինձնից խնդրեցիր քո ծառայության փոխարեն»:*

*Եվ նրան տվեց մի հավատարիմ թիկնապահ ու հրովարտակ արքունական մատանիով կնքված, որ նրա գնա Անդմըշն բերդը և ինչպես որ կամենա, ինչպես որ խնդրեց, այնպես էլ վարվի կապյալ Արշակի հետ, որ Հայաստանի թագավոր էր եղել մի ժամանակ: Եվ Դրաստամատն արքունական հրովարտակով թիկնապահի հետ գնաց Անհուշ բերդը, տեսավ իր իսկական տեր Արշակին, արձակեց երկաթե կապանքներից, ձեռնակապերից ու ոտնակապերից և անուրներից, նրա գլուխը լվաց, նրան լողացրեց. նրան ազնիվ զգեստներ հագցրեց, սեղան սարքեց նրա համար, նրան բազմեցրեց,*

*նրա առաջ Թագավորավայել ընթրիք դրեց, գինի դրեց առաջը, ինչպես Թագավորների կարգն է, նրան զվարթացրեց, մխիթարեց և նվագարաններով ուրախացրեց:*

*Երբ աղանդերի հերթը հասավ, նրա առաջ դրին միրգ, խնձոր, վարունգ ու ամիճ[2] և դանակ տվին, որպեսզի կտրի և ուտի, ինչպես կամենում է: Դրաստամատն էլ ոտքի կանգնած՝ նրան շատ ուրախացնում էր և մխիթարում: Երբ նա խմեց, գինին գլուխն ընկավ, նա հարբեց ու հպարտացավ և ասաց. «Վա՜յ ինձ, Արշակիս. որտեղի՜ց ուր ընկա և ի՞նչ օրի հասա»: Այս ասելով՝ դանակը, որ ձեռքին բռնած ուներ, որով միրգը կամ ամիճը պիտի կտրեր, խրեց իր սիրտը և իսկույն մեռավ հենց նստած տեղում: Դրաստամատը երբ տեսավ, վրա ընկավ, դանակը քաշեց հանեց նրա մարմնից և խրեց իր կողը: Նա էլ նմանապես նույն ժամին մեռավ:*

*1. Բալխը հին Պարսկաստանի վաճառաշահ քաղաքներից մեկն էր, գտնվել է Պարապամիս և Տյան-Շան լեռների միջև: Այն Զրադաշտի ծննդավայրն է համարվում, հիշվում է Դարեհ Վշտասպյանի սեպագիր արձանագրություններում:*

*2. Ամիճը որսի մսից պատրաստված ուտելիք էր:*

## ՊՐՈԿՈՊԻՈՍ ԿԵՍԱՐԱՑԻՆ ԱՐՇԱԿ II-Ի ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Պրոկոպիոս Կեսարացին բյուզանդական պատմիչ է, ծնվել է V դարի վերջին և ապրել մինչև 562 Թվականը: Եղել է զորավար Բելիսարիոսի քարտուղարը և իրավական գործերի խորհրդատուն: Հեղինակ է մի շարք աշխատությունների, որոնցից պատմական մեծ արժեք ունի «Պատերազմների մասին»-ը, որը գրել է 550-554 Թվականներին: Այդ աշխատությունը բաղկացած է ութ գրքից, որոնցից երկուսը նվիրված է պարսկական պատերազմներին:***

***Այդ երկու գրքում արժեքավոր տեղեկություններ կան նաև Հայաստանի մասին: Պատմական կարևոր սկզբնաղբյուր է Պրոկոպիոսի «Անեկդոտան» կամ «Գաղտնի պատմությունը», որտեղ հեղինակը շարադրել է կայսրության ներքին կյանքը: Այստեղ ևս տեղեկություններ կան Հայաստանի, ինչպես նաև Բյուզանդիայի հայկական գաղթավայրերի մասին: Պրոկոպիոսի աշխատությունների մեջ եղած այն հատվածները, որոնք վերաբերում են հայ ժողովրդի պատմությանը, առանձնացրել և Թարգմանել է ակադեմիկոս Հ. Մ. Բարթիկյանը և հրատարակել 1967 Թ. «Պրոկոպիոս Կեսարացի» ընդհանուր վերնագրով: Ստորև բերված հատվածները տրվում են ըստ այս հրատարակության:***

## ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### *Գիրք առաջին*

*5. ... Հայոց պատմությունը պատմում է[1], թե Անհուշ բերդի մասին պարսկական օրենքը միայն մի անգամ խախտվեց՝ հետևյալ կերպ:*

*Պարսիկների և հայերի միջև պարսից Պակուր արքայի[2] և հայոց Արշակ Արշակունու ժամանակ երեսուներկու տարի չհայտարարված պատերազմ էր գնում: Այս պատերազմի երկարատևության պատճառով երկու կողմերն էլ անչափ վնաս կրեցին, մասնավորապես՝ հայերը: Երկուսի միջև անվստահությունն այնքան խորացավ, որ ոչ ոք չէր կարողանում բանակցությունների մեջ մտնել մյուս կողմի հետ: Այդ միջոցին պատերազմ ծագեց պարսիկների և հայերից ոչ հեռու բնակվող այլ բարբարոսների միջև: Հայերը, ցանկանալով պարսիկներին ցույց տալ դեպի նրանց ունեցած իրենց բարյացակամությունը և հաշտություն կնքելու պատրաստակամությունը, անսպասելիորեն հարձակվեցին այդ բարբարոսների երկրի վրա (նախօրոք տեղյակ պահելով պարսիկներին) և թշնամիների գրեթե բոլոր տղամարդկանց կոտորեցին: Պակուրը կատարվածից անչափ գոհ մնալով, Արշակի մոտ ուղարկեց մեծամեծներից ոմանց, հավատարմության նշանակներ տվեց և հրավիրեց իր մոտ: Երբ վերջինս հասավ [Պակուրի] մոտ, արքան նրան հյուրընկալեց և եղբոր նման համարեց: Այնտեղ երկուսն էլ մեծ երդում տվեցին, որ պարսիկները և հայերը միմյանց բարեկամ են և դաշնակից, որից հետո Պակուրը թողեց, որ Արշակը գնա իր հայրենիքը: Քիչ ժամանակ անց, ոմանք զրպարտեցին Արշակին, իբր նա ուզում է ապստամբություն բարձրացնել: Այդ բանին Պակուրը հավատաց և անմիջապես Արշակին իր մոտ կանչեց, ասելով, որ լավ կլիներ բոլոր հարցերի շուրջը նրա հետ խորհրդակցել: [Արշակն] իսկույն գնաց նրա մոտ՝ իր հետ տանելով ամենառազմունակ հայերից ոմանց, ինչպես, նաև Վասիկիոսին, որը նրա զորավարն էր և խորհրդականը՝ շատ քաջ և խելացի[3]: Պակուրը և՛ Արշակին, և՛ Վասիկիոսին սկսեց բացեիբաց պախարակել և ամբաստանել, որ նրանք դրժել են երդումը և ուզում են շուտով ապստամբություն բարձրացնել, մի բան, որ նրանք մերժեցին, անվերջ երդվելով, որ իրենք երբեք նման մտադրություն չեն ունեցել: Պակուրն սկզբում նրանց կալանավորեց, ապա հարցրեց մոգերին՝ ինչպե՞ս վարվել նրանց հետ: Մոգերն արդար չէին համարում դատապարտելը, քանի որ նրանք չէին ընդունում մեղադրանքը և բացեիբաց չէին խոստովանում, և խորհուրդ տվեցին այնպես անել, որ Արշակը ստիպվի ինքն իրեն մեղադրել: Մոգերն առաջարկեցին արքայական վրանի հատակը*

*ծածկել գոմաղբով՝ կեսը Պարսից երկրի, իսկ մյուս կեսը՝ Հայոց: Արքան այդպես էլ արեց: Այն ժամանակ մոգերը վրանի շուրջը մոգություններ կատարելուց հետո առաջարկեցին արքային, որ նա Արշակի հետ պտույտ կատարի և մեղադրի Արշակի դաշինքը խախտելու և երդմնազանցության մեջ: Մոգերը ևս պետք է ներկա լինեին այդ խոսակցությանը՝ որպես զրույցի վկաներ: Պակուրը հրավիրեց Արշակին, նրա հետ շրջեց վրանում, ուր ներկա էին մոգերը. և հարցրեց՝ թե ինչո՞ւ է նա, դրժելով երդումը, պատճառ դառնում պարսիկների և հայերի մեծ դժբախտության: Քանի դեռ խոսակցությունը տեղի էր ունենում այն մասում, ուր պարսկական հողն էր փռված, Արշակը չէր ընդունում մեղադրանքը, ամենասաստսասարսափելի երդումներով հաստատում էր և վստահեցնում, որ ինքը Պակուրի հավատարիմ ծառան է: Բայց երբ խոսակցության ընթացքում հասնում էին վրանի կենտրոնը, ապա անցնում Հայոց երկրի գոմաղբով ծածկված վայրը, ահա այստեղ Արշակն անսպասելի կերպով, չգիտեմ ինչից դրդված, ոչ միայն փոխում էր խոսակցության չեշտը, դառնում ավելի հանդուգն՝ սպառնալով Պակուրին և պարսիկներին, այլև հայտարարում էր, որ վրեժ կլուծի նման անպատվության համար, երբ ինքը շուտով իր անձի տերը դառնա: Համարձակությամբ այդ ասելով նա ճեմում էր, մինչև որ շրջելով հասավ Պարսից երկրի գոմաղբը: Այստեղ նա նորից նույն երգն էր երգում, որ ինքը Պակուրի ծառան է և այլ ողորմագին խոսքեր ասում: Երբ նորից հասավ Հայոց հողի վրա, նա անցավ սպառնալիքներին: Եվ այսպես բազմիցս մի հողի վրայից մյուսն անցնելով, ոչ մի գաղտնի բան չթողեց: Ահա դրանից հետո մոգերը մեղադրեցին նրան դաշինքը խախտելու և երդմնազանցության մեջ: Պակուրը Վասիկիոսին մորթազերծ արեց, մորթին լցրեց ծղոտով և կախեց շատ բարձր ծառից: Իսկ Արշակին (քանի որ չէր կարող սպանել արքայական արյուն ունեցող մարդուն) բանտարկեց Անհուշ բերդում:*

*Որոշ ժամանակ անց, Արշակին Պարսից երկիրն ուղեկցող ամենամերձավոր մարդկանցից մի հայ մասնակցեց պարսիկների արշավանքին՝ բարբարոս մի ժողովրդի դեմ: Պակուրը, տեսնելով այդ մարդու՝ պատերազմում ցուցաբերած քաջագործությունները և այն, որ նա պարսիկների հաղթության պատճառ դարձավ, պահանջեց նրանից ուզածը խնդրել, խոստանալով բավարարել նրա ամեն մի ցանկությունը: Սա միայն մի բան խնդրեց, որ իրեն թույլատրվի մեկ օր ծառայել Արշակին: Դա [արքային] շատ դժվար դրության մեջ գցեց, որովհետև նա ստիպված էր խախտել վաղեմի օրենքը, սակայն ցույց տալու համար, որ իր խոսքի տերն է, թույլ տվեց, որ խնդիրքը կա-*

*տարվի: Արքայի թույլտվությամբ նա մտավ Անհուշ բերդը, համբուրեց Արշակին և երկուսը գրկախառնված ողբացին իրենց ճակատագիրը և հազիվհազ իրարից բաժանվեցին: Ողբից հետո, հայը լողացրեց Արշակին և արեց ինչ որ ընդունված էր. հագցրեց նրան արքայական հանդերձանքը ու բազմեցրեց բազմոցի վրա: Այնտեղ Արշակը արքայավայել, ըստ նախկին սովորության, հյուրասիրեց ներկա եղողներին: Ճաշկերույթի ժամանակ բազմաթիվ կենացներ և այլ խոսքեր ասվեցին, որոնք շատ դուր եկան Արշակին: Գինարբուքը երկարեց մինչև գիշեր և խոսակցությամբ շատ ուրախացան և անչափ բավարարություն ստացած՝ հազիվ բաժանվեցին իրարից: Պատմում են, որ այն ժամանակ Արշակն ասել է, թե լավագույն օրն է անցկացրել, հանդիպել է իր ամենասիրած մարդուն, և որ այլևս ի վիճակի չէ տեսնել կյանքի տառապանքները: Այդ ասելուց հետո ինքնասպանություն է գործել այն դանակով, որ ճաշկերույթի ժամանակ դիտմամբ թաքցրել էր, և ահա այդ ձևով վախճանվել: Արշակի մասին այս [վկայությունը] Հայոց պատմությունն է տալիս և, ինչպես վերևում ասվեց, այդ ձևով Անհուշ բերդի մասին օրենքը խախտվեց: Իսկ ես շարունակում եմ ընդհատածս [պատմությունը]:*

*1. Պրոկոպիոսի ակնարկը թե՝ «Հայոց պատմությունը պատմում է», անշուշտ, վերաբերում է Փավստոս Բուզանդի «Հայոց պատմությանը»: Պրոկոպիոսն ամբողջապես և բառացի վերցրել է Արշակի և Վասակի Պարսկաստան կանչվելու հատվածը, Արշակի դատաքննությունը՝ հայկական հողի և ջրի միջոցով, Արշակի բանտարկությունն Անհուշ բերդում, Դրաստամատի և Արշակի ինքնասպանությունը և այլ մանրամասնություններ: Քիչ հավանական է, որ Փավստոսի բնագիրը Պրոկոպիոսի ժամանակ գոյություն է ունեցել հունական թարգմանությամբ, մնում է կարծել, որ կամ Պրոկոպիոսն է իմացել հայերեն, օգտվել է հայկական բնագրից և կամ ուրիշներն են այդ հատվածները թարգմանել հունարեն:*

*2. Խոսքն այստեղ պարսից թագավոր Շապուհ II-ի մասին է:*

*3. Խոսքը վերաբերում է հայոց սպարապետ Վասակ Մամիկոնյանին:*

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ԱՐՏԱԳԵՐՍԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Դ*

***Գլ. ԾԵ.*** *Այնուհետև պարսից Շապուհ թագավորը Հայոց աշխարհի վրա ուղարկեց իր իշխաններից երկուսին, մեկի անունը Զիկ, մյուսինը՝ Կարեն, հինգ հարյուր բյուր[1] զորքով, որ գան Հայոց աշխարհը քարուքանդ անեն: Նրանք եկան Հայոց աշխարհի վրա: Երբ Հայոց աշխարհի տիկինը՝ հայոց Արշակ թագավորի Փառանձեմ կինը, տեսավ, որ պարսից թագավորի զորքերը լցվեցին Հայոց աշխարհը, առավ իր հետ մոտ տասնմեկ հազար ընտիր սպառազինված պատերազմող մարդիկ ազատներից և պարսից զորքերից խույս տալով, դիմեց, գնաց Արտագերս բերդն Արշարունյաց գավառում[2]: Հետո պարսից բոլոր զորքերը հասան, բերդի շուրջը նստեցին, պատեցին, պաշարեցին: Իսկ նրանք ներսը ամրացան՝ հույս դնելով տեղի ամրության վրա, իսկ սրանք բանակ զարկելով, նստեցին դուրսը, ձորերի շուրջը: Այսպես տասներեք ամիս բերդի շուրջը նստեցին և չկարողացան բերդն առնել, որովհետև տեղը շատ ամուր էր: Ամբողջ երկիրը քանդեցին, ավերեցին, դուրս էին գալիս գավառները և երկրներն ավարի էին առնում, մարդիկ և անասուններ գերելով, բերում էին իրենց բանակը, ուրիշ տեղերից կենսամթերք էին բերում և ուտում՝ բերդը պաշարման մեջ պահելով:*

*Իսկ Պապը՝ Արշակի որդին, այդ ժամանակ Հայոց աշխարհում չէր. նա հունաց թագավորի մոտ էր[3], իսկ ազատների տոհմերից բաղկացած ամբողջ բանակն այս բաները լսելով՝ գնաց իրենց համար*



***10 կամարանի կամուրջ Տիգրիս գետի վրա.***
***հեռվում Ամիդ քաղաքի պարիսպներն են***

*օգնություն խնդրելու. նրանց զորագլուխն էր Մուշեղը՝ Վասակ սպարապետի որդին: Նրանք գնացին իրենց արքայորդու մոտ և բանակցում էին Հունաց թագավորի հետ, նրան համոզում էին իրենց թիկունք լինել: Իսկ Հայոց աշխարհը նրանք հաճախ սուրհանդակներ էին ուղարկում երկրի տիկնոջ՝ Փառանձեմի մոտ, որ տոկա, բերդը պաշտպանի, պարսից ձեռքը չհանձնվի: Նրա որդուց՝ Պապի կողմից էլ հաճախակի պատվիրակներ էին գալիս չարաթ չարաթի վրա, գաղտնի ռնով մի հնարով բերդ էին մտնում, սիրտ էին տալիս տիկնոջը. այսպես բերդի պաշարումը տևեց տասներեք ամիս: Իսկ պատվիրակները շարունակ գնում գալիս էին՝ ասելով, թե՝ «Պի՛նդ կաց, Պապ որդիդ գալիս է և կայսերական գունդ է բերում օգնություն»: Այս քաջալերությունը երկար ձգձգվում էր, որովհետև ասում էին. «Մի քիչ էլ, մի փոքր ժամանակ էլ համբերի՛ր, օգնությունը հասել է»:*

*Տասնչորսերորդ ամսից հետո Աստծուց հարված հասավ բերդում ապաստանած գաղթականների վրա. բերդում եղողների մեջ մահ ընկավ, աստվածային պատուհաս... Մահը սկսվելու օրից մի ամիս էլ չտևեց, որ բոլորը կոտորվեցին, մոտ տասնմեկ հազար տղամարդ և մոտ վեց հազար կին. մի ամիս չանցավ, որ բերդում եղածները բոլորը կոտորվեցին... Իսկ տիկին Փառանձեմը տեսնելով, որ մենակ մնաց, բերդի դուռը բացեց և պարսից զորքը թողեց բերդից ներս: Եկան տիկնոջը բռնեցին և բերդից իջեցրին: Հետո պարսից զորավարները բերդը բարձրացան, ավար առան Հայոց թագավորի գանձերը, որ բերդում պահվում էին. բոլորը վար իջեցրին: Ինը օր, ինը գիշեր շարունակ իջեցնում էին, ինչ որ գտան Արտագերս բերդում, և տիկնոջ հետ միասին գերի քշեցին:*

*Այնուհետև եկան Արտաշատ մեծ քաղաքը, գրավեցին, նրա պարիսպները կործանեցին. այնտեղ էլ պահված գանձերն առան և ամբողջ քաղաքը գերեվարեցին: Արտաշատ քաղաքից գերի տարան ինը հազար տուն հրեա, որոնց Արշակունի Տիգրան թագավորը*[4] *գերի էր բերել Պաղեստինից, և քառասուն հազար տուն հայ: (Այսքան մարդ) Արտաշատ քաղաքից տարան: Քաղաքի շինություններից փայտաշենները կրակ տվին այրեցին, քարաշենները քանդեցին, նույնպես և պարիսպը. քաղաքի բոլոր շինվածքները հիմնահատակ կործանեցին, ոչ մի քար քարի վրա չթողին, քաղաքը բնակիչներից թափուր, անմարդի, ավերակ դարձրին:*

*Գրավեցին Վաղարշապատ քաղաքն էլ. քանդում, բրում, հիմքից կործանում էին. այս քաղաքից էլ գերի տարան տասնինը հազար տուն: Ամբողջ քաղաքում շենք չթողին, բոլորը քարուքանդ արին,*

*կործանեցին: Ասպատակներ ուղարկելով՝ բոլոր չափահաս մարդկանց կոտորում էին, կանանց, երեխաներին գերի էին վերցնում: Հայոց թագավորության բոլոր բերդերն առան, մեծ քանակության պաշարեղեն հավաքեցին նրանց մեջ և բերդապահներ թողին:*

*Առան Երվանդաշատ մեծ քաղաքն էլ. այստեղից դուրս բերին քսան հազար տուն հայ և երեսուն հազար տուն հրեա, իսկ քաղաքը հիմնահատակ կործանեցին: Հետո առան Բագրևանդի Զարեհավան քաղաքը. այնտեղից էլ գերի վերցրին հինգ հազար տուն հայ և ութ հազար տուն հրեա և քաղաքը հիմնիվեր կործանեցին: Առան նաև Զարիշատ մեծ քաղաքն Աղիհովիտ գավառում, (գերի վերցրին) տասնչորս հազար տուն հրեա և տասը հազար տուն հայ և այն էլ հիմնահատակ կործանեցին: Առան նաև Վան ամուր քաղաքը Տոսբ գավառում, կրակ տվին այրեցին, հիմքերը քանդեցին. այնտեղից էլ դուրս բերին հինգ հազար տուն հայ և տասնութ հազար տուն հրեա:*

*Հրեաների այս ամբողջ բազմությունը, որ Հայոց աշխարհից գերի տարան, Հայոց Տիգրան մեծ թագավորը բերել էր Պաղեստինից հին ժամանակ, երբ նա գերեց և Հայաստան բերեց հրեաների Հյուրկանոս քահանայապետին: Տիգրան մեծ թագավորն այս բոլոր հրեությունն իր դարում բերեց, բնակեցրեց Հայաստանի քաղաքներում: Իսկ այս ժամանակ (պարսիկները) ավերեցին այդ քաղաքները, նրանց բնակիչներին գերեցին, նրանց հետ միասին՝ Հայոց ամբողջ աշխարհն ու գավառները: Դուրս բերին գերիներ զանազան գավառներից, կողմերից, ձորագավառներից, աշխարհներից, հավաքեցին բերին Նախճավան քաղաքը, որ իրենց զորքերի բանակատեղին էր: Այս քաղաքն էլ առան, քանդեցին, այնտեղից էլ հանեցին երկու հազար տուն հայ և տասնվեց հազար տուն հրեա և մյուս գերիների հետ տարան:*

*Հայոց աշխարհում թողին ոստիկաններ ու վերակացուներ՝ երկրի մնացորդ ժողովուրդը հպատակեցնելու, իսկ իրենք Փառանձեմ տիկնոջն առնելով, գանձերով ու բազմաթիվ գերիներով տարան Պարսից աշխարհը. եկան, բերին հասցրին Պարսից աշխարհը Շապուհ թագավորի մոտ:*

*Երբ Փառանձեմ տիկնոջը բերին հասցրին Պարսից աշխարհը և Հայաստանի բոլոր գերությունն ու գանձերը և Փառանձեմ տիկնոջը թագավորի առաջը հանեցին, պարսից թագավորը մեծ շնորհակալություն հայտնեց իր զորավարներին: Պարսից Շապուհ թագավորը կամեցավ նախատինք հասցնել (Արշակունյաց) տոհմին, Հայոց աշխարհին և թագավորությանը: Հրամայեց կանչել իր բոլոր զորքերին, իր մեծամեծներին, ստորին պաշտոնյաներին և իր տիրած աշխարհի բոլոր մարդկանց, և այս բազմության մեջ բերել Հայաստանի տիկ-*

*նոջը՝ Փառանձեմին: Եվ հրամայեց հրապարակում չինել ինչ-որ սարք, որի վրա գցել տվեց տիկնոջը և արձակել նրա վրա՝ անասնական պիղծ խառնակության համար: Այս կերպ սպանեցին Փառանձեմ տիկնոջը: Իսկ գերիների ամբողջ բազմությունը տարան բնակեցրին մի մասը Ասորեստանում, մյուս մասը՝ Խուժաստան երկրում:*

*1. «Բյուրը» 10 հազար է. հինգ հարյուր բյուրը հավասար է հինգ միլիոնի, որն, անկասկած, չափազանցված է:*

*2. Արշարունյաց գավառի Արտագերս ամրոցը Հայաստանի նշանավոր և անմատչելի բերդերից մեկն էր:*

*3. Այդ ժամանակ Բյուզանդիայի կայսրը Վաղեսն էր (364-378):*

*4. Խոսքը Արտաշեսյան Տիգրան II Մեծ Թագավորի (95-55) մասին է:*

## ԱՄՄԻԱՆՈՍՆ ԱՐՏԱԳԵՐՍԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### *Գիրք XXVII*

*Գլ. 12, § 5-8. Պարսից Շապուհ Թագավորն այդ անազնիվ չարությունը կատարելուց հետո[1], ներքինի Գլակին և Արտավանին հանձնեց Հայաստանը՝ հանձնարարելով նրանց բոլոր ջանքերը գործ դնել ոչնչացնելու համար Արտագերսը: Նրանցից մեկը՝ Գլակը, ներքինի էր, իսկ մյուսը՝ Արտավանը՝ բանակի հրամանատար: (Արտագերսը բերդաքաղաք էր. այն ուներ ամուր պարիսպներ և ուժեղ պահակազոր): Այստեղ էր պահվում Արշակի գանձարանը, այստեղ էր գտնվում նաև Արշակի կինը՝ տղայի հետ միասին[2]:*

*Կատարելով Շապուհի հրամանը, պարսից զորավարները ձեռնարկեցին Արտագերսի պաշարումը: Բայց բերդը գտնվում էր անմատույց բարձունքում և անկարելի էր մոտենալ, մանավանդ՝ ձմեռը, երբ գետինը ծածկված էր ձյունով ու սառույցով: Գլակը, որպես ներքինի, ընդունակ էր կանանց հետ փաղաքշանքով վարվելու, ուստի Արտավանի ուղեկցությամբ եկավ անմիջապես պարսպի տակ՝ հայտնելով, թե ինքը ինչ-որ բան ունի ասելու: Հավաստիություն ստանալով, որ իր անձը վտանգի չի ենթարկվի, իր ընկերոջ հետ միասին մտավ բերդի ներսը:*

*Նա թագուհուն և կայազորին սկսեց սարսափահար անել, խորհուրդ տալով չուտափույթ անձնատուր լինել և մեղմացնել Շապուհի կատաղությունը՝ նշելով նրա հանրահայտ դաժանությունը: Խոսակցությունը երկար տևեց: Բոլոր նրանք, ովքեր վճռականապես*

*համաձայն էին բերդը հանձնելու մտքին, Թագուհու արցունքներից ազդված, որ լաց էր լինում ճակատագրի դաժանության համար, խղճալով Թագուհուն՝ փոխեցին իրենց կարծիքը: Գլակը և Արտավանը, հույս ունենալով, որ հետագայում առատ վարձատրություն կստանան հռոմեացիներից, գաղտնի խորհրդակցելով համոզեցին (պաշտպաններին), որ ուժեղ մի գունդ, բաց անելով բերդի դուռը, գիշերվա պայմանավորված ժամին, անսպասելի հարձակում գործի Թշնամու ճամբարի վրա: Նրանք աշխատեցին այնպես անել, որ դավադիրները մնան անհայտ: Համաձայնությունը հաստատվեց երդումով:*

*Գլակը և Արտավանը դուրս եկան բերդից և հայտարարեցին, որ բերդաքաղաքի պաշարվածները խնդրում են երկու օր ժամանակ տալ, որպեսզի խորհրդակցեն, Թե ինչպես են վարվելու իրենք: Դրանով նրանք կարողացան պարսիկների մոտ առաջացնել կատարյալ անհոգություն:*

*Եվ ահա գիշերը, երբ բոլորը քնած էին խորը քնով, բացվեց բերդաքաղաքի դուռը. այնտեղից արագ դուրս եկավ մարտիկների մի զորամաս՝ սրերը հանած, գաղտագողի կամացուկ հարձակվեց Թշնամու ճամբարի վրա, ուր վտանգ չէր ակնկալվում, և առանց դիմադրության հանդիպելու, սկսեց կոտորել բազմաԹիվ քնած մարդկանց:*

*Այս անսպասելի դավադրությունը և պարսիկների հանկարծակի կոտորածն անչափ կատաղեցրեց Շապուհին: Դրան ավելացավ նաև այն, որ Վալենտ կայսրն[3] ընդունել էր Արշակի որդի Պապին, որը մոր խորհուրդով փախել էր նրա մոտ փոքրիկ շքախմբով: Կայսրը նրան բնակության վայր էր հատկացրել Նեոկեսարիան՝ Պողեմոնական Պոնտոսի նշանավոր քաղաքը, և նրան տվել կոչմանը համապատասխան ապրուստի միջոցներ և ընդունել հարգանքով:*

*Գլակը և Արտավանը Վալենտ կայսեր վերաբերմունքից քաջալերված, դեսպանություն ուղարկեցին նրա մոտ և խնդրեցին ռազմական օգնություն ցույց տալ և Թագավոր նշանակել Պապին: Կայսրը նկատի ունենալով այդ ժամանակ ստեղծված իրադրությունը, մերժեց օգնություն ցույց տալ, սակայն հանձնարարեց Տերենտիոս զորավարին՝ Պապին տանել Հայաստան իբրև երկրի կառավարիչ՝ առանց Թագավորի անուն և աստիճան կրելու: Այս արվեց միանգամայն ճիշտ դիտավորությամբ. (կայսրը) ցանկանում էր խուսափել խաղաղության պայմանագիրը խախտելու մեղադրանքից:*

*Շապուհը, տեղեկություններ ստանալով Արտագերսի իրադարձությունների մասին, գազանային կատաղության մեջ ընկավ. նա հավաքեց մեծ բանակ և մտավ Հայաստան ու ենԹարկեց երկիրն անլուր*

*ավերածության: Պապը, վախենալով ներխուժումից և ոչ մի տեղից օգնություն չակնկալելով, փախավ բարձր այն լեռները, որոնք բաժանում են մեր սահմանները Լազիկայից: Այնտեղ նրանք հինգ ամիս թաքնվեցին խիտ անտառներում և լեռնային կիրճերում: Շապուհի բոլոր ջանքերը՝ բռնելու թագավորին, ապարդյուն անցան:*

*Շապուհ թագավորը նկատի ունենալով, որ ձմռան ցրտերը վրա հասնելուց հետո իզուր ժամանակ է վատնելու, կրակի մատնեց բոլոր պտղատու ծառերը: Ուժով կամ դավադրության միջոցով նա կարողացավ տիրել Հայաստանի ուժեղ պահակազորով ամրացված բերդերն ու ամրությունները: Ապա նա իր բոլոր զորքերով պաշարեց Արտագերսը: Երբ նրան հաջողվեց հաճախակի գրոհներով բերդաքաղաքի կայազորը հասցնել ուժասպառության, պաշտպանները ստիպված եղան բաց անել ամրոցի դռները: Նա հրդեհեց ամրոցը: Այնտեղից նա տարավ Արշակի կնոջը՝ թագավորական գանձերի հետ միասին:*

*Կայսրը այս դեպքերը նկատի ունենալով՝ այդ կողմերը ուղարկեց կոմս Արինթեոսին, որպեսզի նա օգնի հայերին, եթե պարսիկները կրկին անգամ փորձեն անհանգստացնել նրանց...*

*Պարսիկները կարող էին կործանել Հայաստանը, եթե չվախենային պաշտպանության եկած Արինթեոսից և չհետաձգեին իրենց նախատեսած նոր արշավանքը: Նրանք այժմ սահմանափակվեցին միայն նրանով, որ դեսպանություն ուղարկեցին կայսեր մոտ՝ խնդրելով, որ նա չպաշտպանի հայ ժողովրդին, ինչպես որ պայմանավորված էր եղել իր և Հովիանոսի միջև կնքված պայմանագրով: Նրանց խնդրանքը մերժվեց: Հետո, Տերենտիոսը նորից ետ ուղարկվեց Հայաստան տասներկու լեգեոնով:*

*1. Նկատի ունի Արշակ II-ի բանտարկությունը:*

*2. Խոսքը Փառանձեմ թագուհու և թագաժառանգ Պապի մասին է:*

*3. Խոսքը նույն Վաղես կայսեր մասին է:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՁԻՐԱՎԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

***Գլ. ԼԷ.*** *Մեհրուժանը Խորասանի երկրում Շապուհին[1] իմաց տվեց, թե ինչպիսի մեծ օգնություն ցույց տվեց Թեոդոսը[2] Պապին. ուստի Շապուհից հրաման է տրվում, որ պարսից ամբողջ զորքը Մեհրուժանի հետ Հայաստան գնա պատերազմի: Այսպես և Պապն ու Տերեն-*

*տիանոսն իմաց են տալիս Թեոդոսին, թե Շապուհը բոլոր զորքերին հրամայեց մեր դեմ դուրս գալ, բացի դրանիկներից[3]: Ապա նաև Թեոդոս Օգոստոսը Աղդե մեծ կոմսին հրամայեց գնալ Պապին օգնության, իր հետ վերցնել բոլոր հունական զորքերը, ոչ ոքի բաց չթողնել, վերցնել նույնիսկ քաղաքների հետևակ պահապաններին, որոնք մետաքսյա վիշապանիշ դրոշներ էին կրում:*

*Պատերազմը գումարվեց Ձիրավ կոչված դաշտում, և ճակատներն իրար մոտեցան: Հայոց քաջ նախարարների պատանիներն իրենց կամքով խիզախելով՝ մտան երկու ճակատների մեջ, առաջնորդությամբ իրենց սպարապետ Սմբատ ասպետի՝ Բագարատի որդու, որ Բագրատունյաց ցեղից էր: Պարսից զորքերի միջից էլ դուրս եկան նրանց հասակակիցները, երկու ճակատների մեջ այս ու այն կողմ շարժվեցին և ցրիվ եկան: Երբ պարսից պատանիները ետ էին դառնում, մերոնք անմիջապես հասնում էին նրանց հետևից և ինչպես փոթորիկ, որ անտառը տերևաթափ է անում, այնպես էլ նրանք արագորեն նիզակներով նրանց վայր էին գցում ձիերից և սառը դիակներ գետնի երեսին փռում, քանի որ նրանք չէին կարողանում իրենց ճակատի մեջ մտնել: Իսկ երբ պարսիկներն էին մերոնց ետ դարձնում, սրանք մտնում էին հունաց՝ վահաններով պատսպարված ճակատը, իբրև մի ամուր քաղաք, և ամենևին չէին վնասվում: Որովհետև Գորգոնոսը՝ հետևակ զորքի հրամանատարը, այնպես վահաններով պատեց Պապի ճակատը, որպես պարսպով:*

*Որովհետև հունաց զորքերն սպառազինված էին ոսկեղեն և արծաթեղեն զենքերով և նրանց ձիերն էլ նույնպես զարդեր էին կրում, ուստի նրանք կարծես մի պարիսպ էին կազմում, որոնցից շատերն իրենց զգեստների ջղյա և կաշյա պահպանակների պատճառով կարծր քարերի տեսք էին ստանում, և նրանց վրա անխալամ գեսերը, իբրև նշաններ, ծածանվում էին սաղարթախիտ ծառերի սաղարթների նման: Իսկ վիշապների (վիշապի նկարով դրոշակներ) գալարումները, որոնք քամուց ուռչելով ահագին կերպով բացել էին բերանները, ուրիշ բանի չեմ կարող նմանեցնել, քան եթե մի ադամանդյա լեռան, որ իջնում է դեպի ծովը,– այսինքն՝ հունաց ամբողջ ճակատը դեպի պարսկական զորքը, որովհետև սրանք էլ նմանվում էին մի հզոր գետի, դեպի մի կողմ ծավալված, որոնք հագած զրահներն արդարև ջրի գույնի տպավորություն էին թողնում:*

*Երբ Մեծ Ներսեսն այս բոլորը տեսավ, բարձրացավ Նպատ լեռան գլուխը և ձեռքերը դեպի երկինք բարձրացրեց և առանց իջեցնելու աղոթք էր անում...*

*Իսկ երբ արևը ծագեց մեր զորքերի դեմուդեմ, պղնձապատ վահանների ցոլքը լեռների վրա էր փայլատակում ինչպես մեծ ամպից, և (այդ ճակատից) դուրս էին թռչում մեր նախարարներից լավ զրահավորվածներն ինչպես փայլատակող ճառագայթներ, որոնց տեսքից միայն պարսկական գունդը երկյուղի մեջ ընկավ, բայց մի քիչ նաև մեր գունդը, որովհետև (դիմացից) ծագած արևի պատճառով չէր կարող դեմուդեմ նայել: Բայց երբ միմյանց ընդհարվեցին, ամպը հովանի եղավ և մեր կողմից սաստիկ քամի փչեց պարսկական գնդի դեմ: Կռվի խառնուրդի ժամանակ Սպանդարատ Կամսարականը հանդիպեց մի մեծ խմբի, որի մեջ էր քաջ Ղեկաց (լեզգիների) թագավոր Շերգիրը, որ ճակատի մեջտեղում պինդ կանգնած էր՝ միջին գնդի գլուխն անցած: Սպանդարատը հարձակվեց, խումբը ճեղքեց և քաջին գետին տապալեց չանթահար եղածի նման, և խումբը չուռ տալով փախուստի մատնեց: Եվ այսպես հունաց և հայոց զորքերն առհասարակ, երկնային օգնությամբ զորացած, թշնամիների դիակներով ամբողջ դաշտը լցրին և մնացածներին փախցնելով հալածեցին: Սրանց հետ էր և Ուռնայրը, Աղվանից թագավորը, որ խոցված էր Վասակ Մամիկոնյանի որդի Մուշեղից, պատերազմից դուրս հանեցին:*

*Բայց չարագործ Մեհրուժանը ձիու վիրավորված լինելու պատճառով չկարողացավ փախչողների հետ արագ հեռանալ, հայոց Սմբատ սպարապետն աճապարելով հասավ նրա մոտ, նրա հետ եկող զորքերին կոտորեց և այն թշվառականին ձերբակալեց Կոգայովտի եղեգնուտի ափին: Մտածելով, թե գուցե Մեծ Ներսեսը նրան փրկի, այն պատճառով բանակ չտարավ, այլ նույն տեղերում չարագործին փչացնելու համար պատրաստ է գտնում վրանաբնակներ, որոնք կրակ էին վառել, որպեսզի միս խորովեն երկաթե շամփուրով: Նա շամփուրը տաքացնելով երկու փաթ բոլորեց պսակի ձևով և շիկացնելով ասաց. «Քեզ պսակում եմ, Մեհրուժան, որովհետև դու ձգտում էիր Հայոց վրա թագավորելու և իմ՝ ասպետիս պարտքն է քեզ պսակել իմ հայրերի իշխանության կարգով»: Եվ կրակի նման շիկացած (շամփուրը) դրեց Մեհրուժանի գլխին, և այսպես այն չարը սատկեց: Այնուհետև երկիրը խաղաղվեց՝ Պապի ձեռքի տակ նվաճվելով:*

*1. Խոսքը պարսից արքա Շապուհ II Երկարակյացի (309-379) մասին է:*

*2. Բյուզանդիայի Թեոդոսիոս I Մեծ կայսրը, գահակալել է 379-395 թվականներին:*

*3. Նկատի ունի պալատական պահապան զորամասերին:*

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ՊԱՊ ԱՐՇԱԿՈՒՆՈՒ ՆԵՐՔԻՆ ԵՎ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

#### *Դպրություն Ե*

***Գլ. Բ.*** *Ապա Վասակի որդի Մուշեղը՝ Մեծ Հայքի սպարապետը, ընտրեց քառասուն հազար ընտիր և հավատարիմ մարդիկ ազնվականներից ու ազգականներից, միաբան և միակամ, պատրաստեց նրանց համար ձի, զենք, ուտեստ, և իր հետ առնելով գնաց Ատրպատականի սահմանում նստեց՝ Հայոց աշխարհը պահպանելու համար: Նույն ժամանակ պարսից Շապուհ թագավորն էլ իր զորքով ամենայն պատրաստությամբ եկավ Ատրպատական աշխարհը. և նրա բանակի մի գնդի առաջնորդն էր Մերուժանը, իսկ թագավորի բուն գունդը մնաց Թավրեժում:*

*Եվ հայոց զորավար ու սպարապետ Մուշեղը իր քառասուն հազարով գալիս հարձակվում է (Շապուհի) բանակի վրա ու կոտորում է բոլորին: Պարսից Շապուհ թագավորը մի ձիով փախչելով ճողոպրում է, իսկ բանակի ամբողջ բազմությունը սրի է անցկացնում Մուշեղը հայոց զորքով: Շատերին կոտորեցին, պարսից ավագներից շատերին ձերբակալեցին, ավար առան պարսից թագավորի գանձերը, բռնեցին նաև տիկնանց տիկնոջը՝ մյուս կանանց հետ միասին: Մուշեղ սպարապետը ձեռք գցեց նաև ամբողջ մաշկավարզանը[1], իսկ մոտ վեց հարյուր ավագների հայոց Մուշեղ զորավարը հրամայեց մորթազերծ անել, մորթերը հանել ու խոտով լցնել և ապա բերել տվեց հայոց Պապ թագավորի մոտ: Այսպես էր անում իր հոր՝ Վասակի վրեժն առնելու համար:*

*Բայց պարսից Շապուհ թագավորի կանանց որևէ անարգանք հասցնել թույլ չտվեց հայոց Մուշեղ զորավարը, այլ հրամայեց բոլորի համար ժանվարներ[2] պատրաստել և նրանց բոլորին ազատ արձակեց իրենց ամուսնու՝ Շապուհ թագավորի ետևից: Պարսիկներից էլ մարդիկ արձակեց, որ ողջ և անարատ գնան պարսից Շապուհ թագավորի մոտ, իսկ պարսից թագավորը զարմացավ Մուշեղի բարության, քաջության և ազնվության վրա, որ իրեն ոչ մի անարգանք չհասցրեց կանանց վերաբերմամբ: Այդ ժամանակները Մուշեղը մի ճերմակ ձի ուներ, իսկ պարսից Շապուհ թագավորը, երբ գինու (գավաթը) ձեռքն էր առնում, երբ ուրախության ժամանակ իր զորքին հյուրասիրում էր, ասում էր. «Ճերմակաձին թող գինի խմի»: Եվ մի գավաթի*

*վրա նկարել տվեց Մուշեղի պատկերը՝ ճերմակ ձի հեծած, և ուրախությունների ժամանակ այդ գավաթը դնում էր իր առաջ ու շարունակ նույն բանն էր կրկնում՝ «ճերմակաձին թող գինի խմի»:*

*Իսկ Մուշեղը և Հայոց բոլոր զորքերը պարսից բանակի ավարն առան ու լիացան գանձերով և ստացվածքներով. ավարից մեծ բաժին պահեցին իրենց Պապ թագավորի համար, նույնպես և Հայոց այն զորքերի համար, որ մնացել էին Պապ թագավորի մոտ: Ավարից մաս հանեցին հունաց զորավարների համար, որոնք Պապ թագավորի մոտ էին, այնպես էլ բոլոր զորքերին բաժին էին հանում բերած ավարներից: Բայց երբ Հայոց զորքերն իրենց երկիրը դարձան, Հայոց զորքերից չարերը Պապ թագավորի առաջ ամբաստանեցին Մուշեղ սպարապետին, թե ինչո՛ւ նա ազատ արձակեց պարսից թագավորի կանանց, որ մեր թշնամին է. և Հայոց Պապ թագավորն այս բանի պատճառով երկար ժամանակ ոչ քիչ թշնամությամբ էր վարվում Մուշեղի հետ:*

***Գլ. Դ.*** *Սրանից հետո պարսից թագավորը նորից զորահավաք է կատարում և իր ամբողջ ուժով ու զորությամբ և բոլոր զորքերով շարժվում գալիս հասնում է Ատրպատականի աշխարհը: Ինքը քիչ զորքերով մնում է այնտեղ, իսկ զորքերի ամբողջ բազմությունը պատերազմի ուղարկում Պապ թագավորի դեմ: Պարսից զորքը ասպատակում է և հասնում մինչև Հայաստանի միջնաշխարհը: Այն ժամանակ Հայոց Պապ թագավորն էլ հրամայում է զորաժողով անել Բագավանում: Հունաց զորքն էր, որ գտնվում էր Եռանդում ու Բախիշում, եկավ, միասին հավաքվեցին Պապ թագավորի մոտ, իրենց բանակի շուրջը փոս կտրեցին Նպատ լեռան մոտ, Եփրատ գետից ոչ հեռու. կազմակերպվեցին, պատրաստվեցին ճակատամարտի:*

*Ահա Հայոց զորավար Մուշեղ սպարապետը հավաքում է հայկական ամբողջ զորքը. ավելի քան իննսուն հազար մարդ կազմակերպվեցին, պատրաստվեցին: Իսկ երբ պարսից Շապուհն իր զորքերը դասավորում է Հայոց աշխարհի և հունաց զորքերի դեմ, այնտեղ՝ պարսից թագավորի մոտ է լինում Աղվանից Ուռնայր թագավորը: Արդ՝ Ուռնայրն առաջ է գալիս և պարսից Շապուհ թագավորից պարգև է խնդրում, ասելով. «Այրերի մեջ քաջ, եթե կամենում ես, ինձ իբրև պարգև հրաման տուր, որ Պապ թագավորի հայկական զորքերի դեմ ես ինքս դուրս գամ իբրև առաջապահ կռվող իմ գնդով, որովհետև Արյաց գնդին պատշաճ է հունաց զորքերի դեմ դուրս գալ, իսկ ես իմ գնդով Հայոց իշխանների դեմ դուրս կգամ»: Եվ Շապուհ թագավորը հավանություն տվեց, շնորհակալություն հայտնեց ու հրաման տվեց: Բայց Մերուժան Արծրունին պատասխան տվեց ու ասաց Ուռնայրին. «Դու գազ[3] գրկեցիր, շատ զարմանալի կլինի, եթե հավաքել կարողա-*

*նաս»: Եվ Մերուժանը մի մարդու միջոցով գաղտնապես լուր ուղարկեց Հայոց Մուշեղ զորավարին. «Գիտցի՛ր և պատրաստվի՛ր, Մուշեղ, որ Աղվանից Ուռնայր թագավորը մեծ պարծանքով քեզ պարգև է խնդրել: Նայի՛ր, թե ինչ պիտի անես»:*

*Բայց մինչև պարսից զորքերը չվում գալիս էին Հայոց վրա, նրանց հետ էր և Աղվանից Ուռնայր թագավորն իր գնդով: Աղվանից թագավորը խոսում է իր մոտ եղողների հետ և ասում. «Ձեզ այժմվանից հիշեցնում եմ, որ մտքներում պահեք, երբ մենք հունաց զորքերը ձերբակալենք, նրանցից շատերին կենդանի թողեք, որպեսզի կապենք ու տանենք Աղվանք և իբրև կավագործ, գալատոս[4] և որմնադիր աշխատեցնենք մեր քաղաքների, ապարանքների և ուրիշ պիտույքների համար»:*

*Երբ պարսից և հունաց երկու գնդերը եկան իրար մոտեցան և պատրաստվում էին կռվի, Հայոց Պապ թագավորն էլ զինվեց ու պատրաստվեց ճակատամարտի մեջ մտնելու: Բայց Տերենտը՝ հունաց զորավարը, թույլ չտվեց, որ Պապ թագավորը կռվի մեջ մտնի: Նա ասաց. «Հունաց թագավորը մեզ ուղարկեց քեզ համար, թե գնացե՛ք նրան պահպանեցե՛ք: Արդ՝ եթե քեզ մի բան պատահի, մենք ի՞նչ երեսով պետք է տեսնենք մեր թագավորին, կամ ի՞նչ պիտի պատասխանենք: Եթե մենք այստեղ առանց քեզ կենդանի մնանք և մեր թագավորի մոտ հասնենք, մենք գլխապարտ կմնանք մեր թագավորի առաջ: Դու, արքա, արա՛, ինչ որ ասում ենք քեզ. ա՛ռ Ներսես եպիսկոպոսապետին, գնա՛ Նպատ լեռը, մի ամուր անվտանգ տեղ նստի՛ր և թող Սուրբ Ներսես եպիսկոպոսապետը աղոթք անի և խնդրի Աստծուց, որ մեզ հաղթություն տա: Այնտեղից բարձրից կնայես և կտեսնես մեր ջանքերն ու աշխատանքը պատերազմի ընթացքում, ամեն մեկի քաջությունն ու երկչոտությունը, որ քո առաջ կկատարվեն»:*

*Իսկ պատերազմի մեջ Աստծո օգնությունը հասնում է հույներին, և հաղթություն է շնորհվում հայկական գնդին: Պարսից գնդերը պարտություն կրեցին, փախուստի դիմեցին և ցրվեցին, սփռվեցին դաշտերում, լեռների կատարներին, խորերում և ձորերում: Նրանց հետամուտ էին լինում հունաց և Հայոց զորքերը, հասնում ու կոտորում էին մեծ ու փոքր առհասարակ. շատերից քչերը, որոնք լավ ձիեր ունեին, կարողացան փախչել: Փախստականների ետևից էին ընկնում Հայոց զորքերը և շատերին կոտորում էին ճանապարհին, և այսպիսով պարսից զորքերին հալածում էին մինչև Ատրպատական, Հայաստանի սահմանները:*

*Իսկ Մուշեղ Հայոց սպարապետը չարաչար կոտորում էր պարսից*

*զորքերը և, աչք պահելով, հանդիպում է Աղվանից գնդին ու բոլոր զորքերը ջարդում է. հասնում է Աղվանից Ուռնայր թագավորին, մինչդեռ նա փախչում էր: Մոտենալով՝ իր նիզակի կոթով երկար ծեծում է նրա գագաթը՝ ասելով. «Շնորհակալ եղիր, որ թագավոր մարդ ես, գլխիդ թագ ես կրում. ես թագավոր մարդուն չեմ սպանի, մինչև անգամ եթե շատ նեղն էլ ընկնեմ»: Եվ թույլ տվեց նրան ձիավորների հետ փախչել գնալ Աղվանից աշխարհը:*

*Իսկ երբ հայոց բոլոր զորքերը ետ դարձան, թիվ չկար ախոյանների այն գլուխներին, որ հայոց Մուշեղ քաջ զորավարը բերել էր հայոց Պապ թագավորի առաջ: Այնպես էլ բոլոր նախարարներն ու մեծամեծները և ամբողջ զորքը, ամեն մեկն իր չափին: Եվ մեծ հաղթություն եղավ Հայոց աշխարհի ու հունաց զորքերի համար: Նրանք լիացան մեծ ավարով՝ գանձերով, զենքերով, զարդերով, ոսկով ու արծաթով, շատ կարասիներով, ձիերով, ջորիներով և ուղտերով, որ խլեցին (պարսիկներից): Ավարը շատ-շատ էր. նրան թիվ ու չափ չկար:*

***Գլ. Ե.*** *Ապա Աղվանից Ուռնայր թագավորը գաղտնի լուր է ուղարկում Մուշեղին. նրա մոտ մարդ է ուղարկում և տեղեկություն հաղորդում՝ ասելով. «Շատ շնորհակալ եմ քեզանից, որ ինձ չսպանեցիր. Աստված ինձ քո ձեռքը տվեց, բայց դու ինձ խնայեցիր, այս քո լավությունը չեմ մոռանա, քանի կենդանի եմ: Բայց իմաց եմ տալիս քեզ, որ պարսից Շապուհ թագավորը պատրաստվում է բոլոր իր զորքերով անսպասելի կերպով հարձակվել քո վրա»: Այն ժամանակ հունաց ստրատելատը կազմակերպեց իր ձեռքի տակ եղած զորքերը և չարժեց տարավ Ատրպատական աշխարհից՝ Գանձակի կողմից դեպի Հայաստանի սահմանները: Այնպես էլ հայոց Մուշեղ զորավարը մի տեղ հավաքեց հայոց բոլոր զորքերը, որոնք իննսուն հազար ընտիր մարդիկ էին, լավ զինված, նիզակները ձեռքներին, չհաշված ասպարակիրներին: Սրանք էլ ստացված տեղեկության համաձայն, չտապով վաղօրոք հասան իրենց սահմանները. միայն թագավորը մնաց Հայոց աշխարհում: Ներսես եպիսկոպոսապետը ևս մնաց երկրում և հրամայեց ամբողջ երկրում աղոթք անել այն զորքերի համար, որ գնացել էին պատերազմի:*

*Իսկ պարսից Շապուհ թագավորն իր ամբողջ զորքերով գալիս հասնում է պատերազմի տեղը և տեսնում է, որ հունաց զորքերը և հայոց գունդն արդեն կազմ ու պատրաստ են պատերազմի: Երկու ճակատները խառնվում են իրար, և պարսից զորքը պարտություն է կրում: Մանավանդ նիզակավորների գնդերը մոլեգնաբար հարձակ-*

*վելով՝ իրենց ձիերի վրայից հարվածելով՝ քաջությամբ գետին էին գլորում իրենց ախոյաններին պարսից Շապուհ թագավորի դեմուդեմ: Երբ գետին էին գլորում, Հայոց բոլոր զորքերը քաջալերական ձայներով աղաղակում էին. «Ա՛ռ, քաջ Արշակ»: Ամեն անգամ, որ այդ պատերազմում մի ախոյան էին սպանում, նրան էին նվիրում իրենց նախկին թագավոր Արշակին՝ ասելով. «Մեր Արշակ թագավորին մատաղ եղիր»: Երբ Հայոց ազատների նիզակավոր ախոյանները խմբովին հարձակվում էին պարսից նիզակավորների վրա ու վեր էին գլորում, քաջալերությամբ ասում էին. «Ա՛ռ, քաջ Արշակ». իսկ երբ այս ախոյաններին մորթում, գլխատում էին, ասում էին. «Արշակ թագավորին մատաղ եղիր»:*

*Իսկ լեգեոնների զորքի բազմությունն, այսինքն՝ Հունաց ասպարակիր զորքը, նույնպես և Հայոց ասպարակիրները, պահպանում էին Հայոց զորքի թիկունքը, վահաններով պատսպարված լինելով, ինչպես մի ամուր քաղաք (կովողների) թիկունքում: Երբ պարսից զորքերը փոքր-ինչ վանում էին Հունաց զորքերին կամ Հայոց նիզակավոր գնդերը, սրանք Հունաց վահանավոր լեգեոնների կամ Հայոց ասպարակիրների մեջ էին մտնում՝ ինչպես բերդերի մեջ և հանգստանում էին: Իսկ երբ մի փոքր շունչ էին քաշում, ապա այնտեղից դուրս գալով հարձակվում էին և պարսիկներից անթիվ մարդիկ իրենց ոտքերի տակ էին գլորում և սպանում ու գլխատում էին՝ նույն քաջալերական խոսքերն ասելով իրենց Արշակ թագավորի համար: Այսպիսով նրանք անչափ և անթիվ զորքեր կոտորեցին պարսիկներից: Հետո երբ պարսիկները փոքր-ինչ նրանց հաղթում էին, նրանք դարձյալ իբրև մի բերդ ապաստանում էին լեգեոնի վահանավոր զորքերի մեջ, որոնք իրենց վահանները բաց անելով, նրանց ներս էին ընդունում ու փակում: Այդ օրը Հունաց զորքն ու նրանց Տերենտ ստրատելատը և Հայոց գնդերն ու նրանց Մուշեղ սպարապետը պարսից զորքերը ջարդեցին, ոչնչացրին: Պարսից Շապուհ թագավորը քիչ մարդկանցով փախչում է այդ պատերազմից: Իսկ սրանք սահմանապահներ են դնում և դառնում են իրենց Պապ թագավորի մոտ բարի անունով, մեծ ավարով և չքեղությամբ:*

1. ***Մաշկավարդան*** *– նշանակում է արքայական կանանց վրան:*
2. *Այսինքն՝ կառքեր և պատգարակներ:*
3. *Մի տեսակ փուշ կամ չոր խոտ:*
4. ***Գաղատոս*** *– այսինքն՝ քարագործ, սալահատ:*

## ԱՄՄԻԱՆՈՍԸ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### *Գիրք XXX*

*Գլ. 1, §18-23. Տերենտիոսի՝ Պապ թագավորի մասին հաճախակի արած բամբասանքների, ինչպես և Պապին Տարսոն կանչելու և բռնելու անհաջող փորձի հետևանքով[1] սաստկացավ կայսեր անհաշտ ատելությունը Պապի նկատմամբ. սկսեցին անընդմեջ նորանոր նենգություններ հորինել՝ նպատակ ունենալով զրկել նրան կյանքից: Այս (դավադրությունը) գլուխ բերելու գործը գաղտնի գրությամբ հանձնարարվեց Տրայանոսին, որն այն ժամանակ Հայաստանում հռոմեական զորքերի հրամանատար էր նշանակված: Աշխատելով նենգադավ խորամանկությամբ, սա մեկ նրան էր հանձնում Վաղեսի նամակները՝ հավատացնելով նրա բարյացակամ վերաբերմունքը, մեկ ինքն էր գալիս Պապի մոտ ճաշկերույթի և, վերջիվերջո, երբ դավադրությունը լիովին կազմակերպվեց, չատ քաղաքավարի ձևով Պապին հրավիրեց իր մոտ ճաշի:*

*Թագավորը ոչ մի վտանգ չզգալով, եկավ և նստեց իրեն տրամադրված պատվավոր տեղում: Մատուցվեցին ընտիր կերակուրներ: Ընդարձակ դահլիճը դղրդում էր լարավոր և փողավոր գործիքների հնչյուններից: Երբ գինին տաքացրեց գլուխները, ինքը՝ հրավիրող Տրայանոսը, դուրս գնաց բնական կարիքը բավարարելու պատրվակով: Ապա ներս եկավ ահեղատես մի բարբարոս, որը կոչվում է սուպրե: Վայրենին սպառնացող հայացքով, թափահարելով պատյանից հանած սուրը, մոտեցավ երիտասարդ թագավորին, որ սպանի նրան, որի առջև փակված էին դուրս պրծնելու բոլոր ճանապարհները:*



***Վաղես կայսր***

*Թագավորը նրան տեսավ այն ժամանակ, երբ փոքր-ինչ թեքված էր բազկաթոռում: Վեր կացավ և հանեց դաշույնը, որպեսզի, որքան կարող է, պաշտպանի իր կյանքը, սակայն նա վայր ընկավ կրծքից խոցված որպես ամոթալի մի զոհ:*

*Նա հոշոտվեց կրկին հասցված հարվածներից: Ապա այսպիսի ննջումով խարդախվեց դյուրահավատությունը: Հյուրընկալության ժամանակ օտարականի արյունը թափվեց չքեղ սեղանածածկոցների վրա՝ Աստծո հյուրասիրության դեմ հանդիման, մի բան, որը նույնիսկ Եվքսինյան Պոնտոսի կողմում խղճմիտ երկյուղածության արժանի վարմունք է համարվում: Այնուհետև, ճաշկերույթի մասնակիցները, չափից դուրս հագեցած պատահարից, սարսափահար դուրս փախան:*

*1. Բյուզանդական իշխանությունները Պապին ցանկացել են սպանել դեռևս այս դավադրությունից առաջ՝ Տարոնում: Իմանալով այս մասին, Հայոց թագավորն իր թիկնապահ գնդի հետ անմիջապես փախել և դուրս է եկել թակարդից: «Անհաջող փորձ» ասելով Ամմիանոսը նկատի ունի այդ մահափորձը:*

## ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Դպրություն Ե*

***Գլ. ԼԲ.*** *Եվ Պապ թագավորն իր միտքը ծռեց ու սիրտը չուռ տվեց հունաց թագավորից և կամեցավ սեր և միաբանություն հաստատել պարսից թագավորի հետ. սկսեց իրեն թիկունք դարձնել պարսից թագավորին, նրա մոտ պատգամավորներ ուղարկեց միաբանություն հաստատելու համար... Թեպետ Մուշեղը և հայոց բոլոր իշխանները շատ հորդորեցին թագավորին, որ հունաց թագավորության հետ իր ուխտը չխզի, նրանց չլսեց և հայտնի կերպով ցույց տվեց իր թշնամությունը հունաց թագավորի դեմ:*

*Իսկ հունաց իշխաններն ու զորքերը դեռ Հայոց աշխարհումն էին: Իշխաններից մեկի անունը Տերենտ էր, մյուսինը՝ Ադե: Երբ հունաց թագավորը գաղտնի մի դեսպան ուղարկեց Հայաստանում եղած իր զորքերի իշխանների մոտ և հրաման տվեց հայոց Պապ թագավորին սպանել: Երբ հունաց իշխանները Հայաստանում այս հրամանը ստացան իրենց թագավորից, հարմար դեպքի էին սպասում, որ Հայոց Պապ թագավորին սպանեն: Պատահեց մի հարմար ժամանակ, երբ հունաց զորավարները՝ Տերենտն ու Ադեն, իմացան, թե Հայոց Պապ թագավորը մենակ է, երբ հայոց մեծամեծներն ու զորքն այնտեղ չէին, և Պապ թագավորի բանակը գտնվում է Բագրևանդ գավառում՝ Խու կոչված տեղում մի դաշտում, իսկ հունաց զորքերի բանակը գտնվում էր Հայոց թագավորի բանակին մոտ, ապա հունաց զորա-*

*վարները փառավոր հացկերույթ սարքեցին և **Հայոց մեծ Թագավոր Պապին** ընթրիքի հրավիրեցին մեծ պատվով՝ համաձայն նրա արժանապատվության, ինչպես Թագավոր մարդու հրավիրում են փառավոր հացկերույթի. ամեն բան կազմել, պատրաստել էին:*

*Պապ Թագավորն ընթրիքի գալով՝ մտավ ու բազմեց կերուխումի: Եվ երբ Թագավորը մտնում է հունաց Տերենտ զորավարի սենյակը, լեգեոնի ասպարակիր զինվորները, ձեռքներին վահան, գոտիներում սակր, ներսը, սենյակի պատերի մոտ, չրջապատելով պահպանում էին. նույնպես և (սենյակից) դուրս պատրաստ կանգնած էին լավ սպառազինված, իսկ վրայից սովորական զգեստ հագած (զինվորներ): Իսկ Պապ Թագավորն իր խելքով այնպես էր կարծում, թե իրեն պատվելու համար են այդպես անում: Եվ մինչ ընթրիքի ժամանակ նա ուտում էր, սակրավոր զինվորները նրա ետևը կանգնած նրան ամեն կողմից պատում էին: Երբ սկսեցին խմել, ուրախության առաջին բաժակը մատուցեցին Պապ Թագավորին, և իսկույն հնչեցին թմբուկներն ու սրինգները, քնարներն ու փողերն իրենց ներդաշնակ ձայներով: Վահանավոր զորքին հրաման տվին, և մինչ Պապ Թագավորը ուրախության գինին բռնած էր մատներով ու նայում էր գուսանների խմբին, մինչ ձախ ձեռքն արմունկին հենած՝ մատներում բռնած ուներ ոսկե թասը, իսկ աջ ձեռքը դրել էր նրանի կոթին, որ կապած ուներ աջ ազդրին, մինչ բաժակը բերանն էր տարել, որ խմեր, իսկ աչքերով հառած նայում էր գուսանների զանազան խմբերին, հունաց զորքերին աչքի ակնարկով նշան է տրվում. և երկու սակրավոր զինվորներ, որ ետևից կանգնած էին սպասավորության ոսկեպորտ վահաններով, հանկարծորեն միասին սակրերը բարձրացնելով զարկում են Պապ Թագավորին, մեկը ուղիղ վիզն է կտրում, մյուս սակրավորը զարկում է աջ ձեռքի թաթին, որ դրված էր նրանի կոթի վրա, կտրում և դեն է նետում: Պապ Թագավորը տեղնուտեղն ընկնում է բերինքսիվայր. թասով գինին, պարանոցից հոսող արյունը և նրա մարմինը միասին ընկնում են սեղանի վրա: Պապ Թագավորն անմիջապես մեռնում է: Երբ սեղանատանը աղմուկ և չփոթություն ընկավ, Անձևացյաց գավառի տեր Գնելը բազմած տեղից վեր կացավ, սուրը քաշեց և սպանեց զինվորներից մեկին, որ խփել էր Թագավորին: Այն ժամանակ հունաց Տերենտ զորավարն իր սուրը հանելով խփում է և Գնելի գլխից սկավառակը կտրվելով աչքերի վրա է չուռ տալիս, և ուրիշ ոչ ոք ոչինչ չհանդգնեց ասել նրանց և ոչ մի խոսք:*

***Գլ. ԼԳ.** Եվ Հայոց բոլոր մեծամեծ իշխանները հավաքվեցին միասին, և՛ Մուշեղ սպարապետը, և՛ Հայր Մարդպետը, և՛ բոլոր իշխան-*

*ները. «Ի՞նչ անենք, ի՞նչ գործենք,– ասում էին նրանք,– մեր թագավորի վրեժը պահանջե՞նք, թե ոչ»: Վերջը խորհրդի մեջ այս միտքն ընդունվեց. «Մենք չենք կարող հեթանոս պարսիկների ծառայության տակ մտնել և Հունաց թագավորին թշնամացնել, ոչ էլ երկուսին ևս թշնամացնել, որովհետև առանց որևէ մեկի թիկունքի չենք կարող ապրել»: Ապա խորհրդում այսպես որոշվեց. «Ինչ որ եղավ՝ եղավ, թող էլի Հունաց թագավորին ծառայենք, Հունաց թագավորի իշխանությանը հնազանդվենք, թող Հունաց թագավորները մեզ հետ վարվեն ինչպես ուզում են»: Այլևս չմտածեցին վրեժ լուծել կամ մի ուրիշ բան անել, այլ տեղներում լուռ նստեցին:*

## ՓԱՎՍՏՈՍԸ ՎԱՐԱԶԴԱՏԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Գլ. ԼԴ.*** *Հայոց Պապ թագավորի մահից հետո Հունաց թագավորը Հայոց աշխարհի վրա թագավորեցրեց մի ոմն Վարազդատի, որ նույն Արշակունի տոհմից էր: Նա մեծ շքեղությամբ եկավ Հայոց աշխարհը և թագավորեց Հայոց աշխարհում: Նա տարիքով մանուկ էր, արիասիրտ, հզոր ձեռքերով, քաջ սրտով, բայց թեթևամիտ, երեխայի նման խելքը պակաս, մանկամիտ: Բայց նրան տեսան, Հայոց մեծամեծների ու նախարարների բոլոր տոհմերը նրա մոտ հավաքվեցին՝ ուրախանալով, որ նա իրենց վրա թագավորեց:*

*Իսկ Հայոց Մուշեղ սպարապետն առաջնորդում էր հայերին և զգուշությամբ պահպանում էր Հայաստանի սահմանները, ինչպես սովոր էր երկիրը բարեկարգ պահել, և բարի խրատներ էր տալիս մանուկ Վարազդատ թագավորին: Եվ միշտ հոգս էր քաշում Հայոց աշխարհի թագավորության համար, թե ինչպես չեն պահի, և միշտ բարեմտությամբ աշխատում էր, որ թագավորությունը հաստատ մնա. խորհրդակցում էր Հունաց իշխանների հետ և նրանց միջոցով՝ կայսեր հետ, թե հարկավոր է Հայոց աշխարհում քաղաքներ շինել ամեն մի գավառում, որտեղ մի-մի քաղաք, որտեղ երկու-երկու, ամուր պարիսպներով շրջապատած, որպեսզի զորանիստ տեղեր դառնան ամբողջ Հայոց աշխարհում, մինչև Գանձակ սահմանագլուխը, որ սահման էր Պարսկաստանի և Հայաստանի միջև: (Նույնպես խորհուրդ էին անում) հայոց բոլոր ազնվականներին զինավորել կայսերական ծախսով, այնպես էլ Հայոց աշխարհի զորքերը, որպեսզի այս կերպով ամեն զգուշություն ձեռք առնեն իրենց թշնամիների՝ պարսից զորքերի դեմ: Եվ Հունաց թագավորը մեծ ուրախությամբ հանձն առավ այս բաները կատարել, որպեսզի այս բոլոր միջոցներով երկիրը հաս-*

*տատ ու անշարժ կապվի իր հետ, և պարսից թագավորը չկարողանա Հայոց աշխարհը գրավել:*

***Գլ. ԼԵ.*** *Բայց երբ հայոց մեծ նախարարները տեսնում են, թե հայոց Վարազդատ թագավորը դյուրահավատ մանուկ է, չարը բարուց զանազանել չգիտե, սկսեցին այնուհետև թագավորին խաղացնել իրենից ուզածի պես. իրենց խոսքերով էին նրան կառավարում, ինչպես իրենք կամենում էին: Նա ավելի լսում էր մանուկներին, որոնք տարիքով իրեն հասակակից էին, քան իմաստուն ծերերին, որոնք կարող էին նրան օգտակար խրատներ տալ:*

*Իսկ Բատը, որ Սահառունյաց տոհմի նահապետն էր, Վարազդատ թագավորի դայակն ու ուսուցիչը, միտք դրեց Մուշեղից հափշտակել զորավարության՝ սպարապետության գործը: Այս պատճառով նա սկսեց մատնություններ անել նրա մասին իր սանիկին՝ Վարազդատ թագավորին... Եվ այսպիսի խոսքերով չարունակ գաղտնի գրգռում էին թագավորին, մինչև որ համաձայնվեց հայոց զորավար-սպարապետին սպանել ըստ նրանց ցանկության:*

*Հետո խորհուրդ արին, թե ինչպե՛ս կարողանան նրան բռնել, որովհետև նրանից շատ էին վախենում: «Եթե գլխի ընկնի,— ասում էին,— մեծ պատերազմ կհարուցի, և ոչ ոք չի կարողանա նրա քաջությանը դեմ դնել. պետք է մի հնարք, խորամանկություն բանեցնել»: Եվ այսպես սպասում էին: Ապա մի օր Հայոց Վարազդատ թագավորը հրաման տվեց մեծ ընթրիք սարքել մեծ պատրաստությամբ և հրամայեց ընթրիքին հրավիրել բոլոր ավագ, պատվավոր մարդկանց, մեծամեծներին և Մուշեղ զորավարին: Վարազդատը պատրաստեց ընտիր, ուժեղ, հզոր մարդիկ, որ պատրաստ լինեն գործին՝ հանկարծակի, հանպատրաստից, անսպասելի ժամին Մուշեղի վրա հարձակվելու: Հյուրերին շատ ուրախացնում է, շատ գինի է խմել տալիս և շատ զվարճացնում է: Վարազդատ թագավորը նախապես նշան էր տվել իր պատրաստած սպանողներին, թե՝ «Երբ կտեսնեք, ու Մուշեղ սպարապետը լավ հարբել է և հարբեցողությունից խելքը կորցրել է, ես վեր կկենամ իբր թե արտաքնոց գնալու համար, դուք այդ ժամանակ նրան շրջապատեցեք»: Բոլորը չափից դուրս խմեցին, գինովցան, բայց Վարազդատը գինի խմելուց զգուշանում էր: Երբ նա նկատեց, թե հարբեցությունից խելքները կորցրել են, վեր կացավ, իբր թե ջուր թափելու գնալու համար, և սեղան բազմած բոլոր ավագները ոտքի կանգնեցին՝ նրան պատվելու համար: Եվ հանկարծ այն մարդիկ, որոնց հրաման էր տվել, տասներկու մարդ միանգամից միասին հետևի կողմից Մուշեղին բռնեցին, վեց մարդ մի ձեռքից և*

*վեց մարդ մյուս ձեռքից: Երբ Թագավորը ոտքի կանգնեց, (Մուշեղը) նրան նայեց (հարցական կերպով), թե ինչի՞ց է այս, և Թագավորը պատասխանեց ու ասաց. «Գնա՛ Պապ Թագավորի մոտ, հարցրո՛ւ և կիմանաս, թե ինչի՛ց է»: Այս ասելով՝ Թագավորը դեպի դուռն ուղղվեց ու դուրս եկավ: Եվ Մուշեղն ասաց. «Իմ այնքան ծառայություն-ների, արյուն ու քրտինք թափելու, քրտինքս սլաքներով սրբելու վարձատրությունն ա՞յս եղավ: Բայց, այս մահը երանի թե ձիու վրա ինձ հասներ»... Այսքան միայն կարողացավ ասել, ավելի ոչինչ: Իսկույն Բատ Սահառունին՝ Վարազդատ Թագավորի դայակը, ազդրից կախած նրանը հանելով՝ խրեց Մուշեղ զորավարի շնչափողը և իսկույն գլուխը կտրեց: Նրա մարմինը վերցրին ու տարան իր գյուղը:*

*__Գլ. ԼԶ.__ Երբ Մուշեղ սպարապետի մարմինն իր տունը, իր ընտանիքի մոտ տարան, տնեցիները նրա մահվանը չհավատացին, թեպետև տեսնում էին գլուխը մարմնից զատված: Նրանք ասում էին. «Դա անթիվ անգամ կռիվների մեջ էր մտել, ոչ մի վերք չէր ստացել, ոչ մի նետ նրան չէր կպել և ոչ մի ուրիշ զենքով նա չէր խոցվել»: Իսկ ոմանք էլ հույս ունեին, թե նա կկենդանանա. ուստի գլուխը կարելով կցեցին իրանին և հանեցին մի աշտարակի տանիքը դրին՝ ասելով. «Որովհետև քաջ մարդ էր, առլեզները[1] կիջնեն ու սրան կկենդանացնեն»: Պահապան դրին և սպասում էին նրա հարությանը, մինչև որ մարմինը սկսվեց նեխվել: Ապա աշտարակից վար իջեցրին, լացին ու թաղեցին, ինչպես կարգն էր:*

*__Գլ. ԼԷ.__ Իսկ Վարազդատ Թագավորը զորավարության ու սպարապետության գործը հանձնեց Բատին՝ Սահառունյաց տոհմի նահապետին, որ իր դայակն էր և Մուշեղի քսու բանսարկուն ու սպանողը: Նա Մուշեղի փոխարեն դարձավ ամբողջ Հայաստանի զորավար-սպարապետը: Իսկ Մամիկոնյան տոհմին նահապետ ու տանուտեր Թագավոր նշանակեց Վաչեին՝ նույն Մամիկոնյան տոհմից:*

*Այս ժամանակ Պարսկաստանի գերությունից վերադարձան Մամիկոնյան տոհմից երկու եղբայր, որոնց գերի էր տարել Շապուհ Թագավորը, մեկի անունը Մանուել, մյուսինը՝ Կոմս:*

*Երբ Մանուելը իր Կոմս եղբոր հետ եկավ հասավ Հայոց աշխարհը, և երբ նրանց տեսավ Վաչեն, որ նրա գալուց առաջ (Մամիկոնյանների) նահապետն էր, նրան հանձնեց իր իշխանական պատիվը, որ ստացել էր Վարազդատ Թագավորից, որովհետև տոհմի մեջ ավագագույնը նա էր: Այսպիսով Մանուելը ստացավ իրենց տոհմի տանուտերության և նահապետության պատիվը, իսկ Վաչեն դարձավ նրա երկրորդը:*

*Իր տերության պատվին ու փառքին հասնելուց հետո Մանուելը նախ և առաջ առանց Վարազդատ Թագավորի հրամանի, հափշտակեց զորավարությունն ու սպարապետությունը: Ինչ որ նրա նախնիները բուն սկզբից ունեին, և ինչ որ Վարազդատ Թագավորը շնորհել էր իր դայակ Բատին, այդ իշխանությունը Մանուելը ետ խլեց իր համար: Իսկ այնուհետև հայոց Մանուել սպարապետը պատգամ է ուղարկում Վարազդատ Թագավորին և ասում է. «Մենք ամբողջ տոհմով հին ժամանակներից ի վեր հավատարմությամբ ծառայել ենք ձեզ՝ Արշակունիներիդ, մեր կյանքը զոհել ենք ձեզ համար. ապրել ու մեռել ենք ձեզ համար... Առաջին Արշակունի Թագավորները գիտեին, թե ովքե՛ր ենք մենք և ո՛րտեղացի ենք. բայց դու, որովհետև Արշակունի չես, հեռացի՛ր այս աշխարհից և իմ ձեռքից մի՛ մեռնիր»:*

*Իսկ Վարազդատ Թագավորը պատասխան-պատգամ է ուղարկում Մանուել զորավարին և ասում է. «Ես իսկական Արշակունի եմ, որ իմ Արշակունի նախնիների թագը դրի և իմ նախորդների աշխարհին տիրեցի, և իմ հորեղբոր՝ Պապի վրեժն առա քո չարագործ եղբորից՝ Մուշեղից»:*

*Երբ շատ անգամ պատգամավորները գնացին եկան, և ավելի ու ավելի խիստ և վիրավորական խոսքեր իրար ուղարկեցին, դրանից հետո ժամ նշանակեցին պատերազմով իրար հանդիպելու: Նշանակված ժամին եկան հասան ու պատերազմ սկսեցին իրար հետ: Վարազդատ Թագավորն առնում է իր զորքի բանակն ու գալիս հասնում է ճակատամարտի տեղը, լավ սպառազինված ու պատերազմի պատրաստ: Եվ Մանուել սպարապետը, ավելի մեծ պատրաստությամբ, իր գնդով նույն տեղն է հասնում, և Կարինի դաշտում երկու կողմերի գնդերն ընդհարվում են:*

*Այդ օրն արքայական գունդը պարտություն կրեց Մանուելի գնդից: Ոչ սակավ սպանվածներն ընկած էին դաշտի վրա. շատերը խոցված, հաշմացած, վիրավորված, շատ նախարարներ կոտորվեցին և շատերն էլ փախուստի դիմեցին:*

*Իսկ Վարազդատ Թագավորին հալածեցին Հայոց աշխարհի սահմաններից դուրս: Նա գնաց Հունաց աշխարհը, այնտեղ էլ ապրեց, այնտեղ էլ մեռավ:*

*Իսկ հայոց զորավար-սպարապետ Մանուելը երկիրը նվաճեց, հայոց բոլոր մեծամեծներին ու նախարարներին իր մոտ հավաքեց, ինքը նրանց առաջնորդ ու գլուխ եղավ և վարում էր իր իշխանությունը: Երկրին հրամաններ էր արձակում Թագավորի փոխարեն և երկիրը չեն էր պահում: Եվ Պապ Թագավորի կնոջը՝ Զարմանդուխտ տիկ-*

*նոջը, ու նրա Արշակունի որդիներին իբրև Թագավոր էր պահում և շրջեցնում էր պատվով: Մեծ իմաստությամբ և մեծ հաջողությամբ, խելացի կերպով առաջնորդում էր Հայոց աշխարհին, որքան ժամանակ որ ապրում էր: Արշակունի պատանիների անուններն էին՝ մեծինը՝ Արշակ, փոքրինը՝ Վաղարշակ: Մանուել սպարապետը նրանց սնուցում էր իբրև սաներ, իսկ նրանց Զարմանդուխտ մորը մեծապես պատվում էր իբրև տիկնոջ:*

*Բայց Մանուելը, երբ տեսնում է, թե իր արածը հակառակ է հունաց Թագավորի հրամաններին, մտածում է, թե պետք է որևէ մեկին իրենց Թիկունք ունենալ. ուստի տիկնոջ հետ խորհուրդ անելով որոշեցին իրենց Թիկունք անել պարսից Թագավորին:*

***Գլ. ԼԸ.*** *Սրանից հետո հայոց Զարմանդուխտ տիկինը և Մանուել սպարապետը պարսից Թագավորի մոտ ուղարկեցին Գարջույլ Մաղխազին շատ հայ նախարարների հետ, հրովարտակներով, ընծաներով ու նվերներով, (խոստանալով) նրան ձեռք մեկնել, նրան հպատակվել և հավատարմությամբ նրան ծառայել ու Հայոց աշխարհը նրան տալ: Գարջույլը և նրա հետ եղողները հասան պարսից Թագավորի դուռը, մատուցեցին նրան տիկնոջ ու հայոց սպարապետի հրովարտակները և հաղորդեցին հնազանդության վերաբերող պատգամը: Պարսից Թագավորը, երբ նրանց տեսավ, մեծ ուրախությամբ նրանց ընդունեց, մեծ հարգանքով պատվեց և մեծ պարգևներ շնորհեց Գարջույլին:*

*Նրա հետ Հայոց աշխարհն է ուղարկում պարսիկ Սուրենին՝ իր նախարարներից մի երևելիի, և նրա հետ տասը հազար լավ սպառազինված ձիավոր զորք, որ Սուրենը Հայոց աշխարհը գա իբրև Թիկունք Մանուել սպարապետին՝ Զարմանդուխտ տիկնոջը Թշնամիներից պաշտպանելու համար: Եվ պարսից Թագավորը Սուրենի ձեռքով Զարմանդուխտ տիկնոջ համար ուղարկեց Թագ ու պատմուճան և Թագավորական վառ[2] և երկու մանուկների՝ Արշակի ու Վաղարշակի համար Թագեր:*

*Իսկ Մերուժան Արծրունին, երբ տեսնում է այս բոլոր փառքն ու պատիվները, որով պարսից Թագավորը Մանուելին շքեղացրեց, որովհետև եղբոր նման, նրան պատվեց,— շատ նախանձեց Մանուելի փառքին, և մի հնարք էր փնտրում՝ նրանց պարսից Թագավորի աչքից գցելու, որպեսզի նրա փոխարեն ինքը դառնա սիրելի: Եվ երբ նա ոչ մի հնարք չգտավ, նենգության ոչ մի դուռ չգտավ պարսիկների մոտ մտնելու, ապա նա իր մտքում նենգության չար միջոց մտածեց, իր մտադրությունը հաջողեցրեց կեղծավորության միջոցով: Նա հույս*

*դրեց Մանուել զորավարի միամտության վրա, ուստի նախ սկսեց անձնվիրությամբ նրա համակրանքը շահել, մտերմությամբ նրա խելքը առավ: Ապա իրեն հոգացող և խնամատար էր ցույց տալիս նրան: Հետո գալով՝ իր գլխից հնարած սուտ լուր է հաղորդում ու ասում. «Գիտցած եղիր, ո՛վ Մանուել, պարսից թագավորից դեսպան է եկել, քո վերաբերյալ հրաման են բերել Սուրենին, որ քեզ բռնեն ու կապեն, կա՛մ այստեղ սպանեն, կա՛մ ձեռք, ոտք ու պարանոց կապած մեծ զգուշությամբ տանեն պարսից թագավորի մոտ: Հիմա դու գիտես. մտածի՛ր, թե ի՞նչ պիտի անես»: Մանուելը, երբ լսեց, ապշած, զարմացած մնաց իր տեղում և ասաց. «Ես պարսիկների դեմ ոչ մի հանցանք չեմ գործել, ուրեմն ինչո՞ւ նա այդպիսի բան պետք է մեզ անի»: Իսկ Մերուժանն ասում է Մանուելին. «Ես ճշգրտեցի ու հաստատեցի, որ այդ բանը ճիշտ է, քեզ շատ սիրելուց ու վրադ հոգալուց այս լուրը քեզ գաղտնի հաղորդեցի»: Երբ Մանուելը Մերուժանի խոսքին հավատաց և համոզվեց, թե իր լսած բաներն ստույգ են, ապա շատ զորք կուտակեց իր մոտ. հայոց Մանուել զորավարը գունդ կազմակերպեց, և մինչդեռ Սուրենն իր բանակով խաղաղ բնակվել էր, միամիտ, անկասկած, անհոգ, աննենգ խաղաղությամբ, մինչդեռ չկար ոչ մի նենգություն ու դավաճանություն, ինչպես սուտ լուր էր տարածել չարագործ Մերուժանը, հայոց Մանուել զորավարը հանկարծակի, անսպասելի կերպով հասնում հարձակվում է Սուրենի վրա և տասը հազար պարսիկներին ամբողջապես կոտորում: Բայց Սուրեն մարզպանին մի ձիով բաց է թողնում, որ գնա. նրա արևը նրան պարգև է շնորհում: Սուրենը զարմացավ այս բանի վրա, թե ինչո՞ւ նա այդ արեց, և Մանուելն ասաց Սուրենին. «Քեզ իբրև բարեկամի սիրելով ազատում եմ, ողջ-առողջ գնա քո ճանապարհը, բայց ես այլևս պարսիկների թակարդի մեջ չեմ ընկնի»: Ինքը՝ Մանուելը, պատրաստում է զորքերը, գնդեր է կազմակերպում, որովհետև գիտեր, որ մեծ թշնամություն ու գրգռմունք առաջացրեց պարսից թագավորի հետ: Այնուհետև հայոց Մանուել զորավարը բոլոր գնդերով իբրև թագավոր շրջեցնում էր Զարմանդուխտ տիկնոջը՝ Պապ թագավորի կնոջը՝ իբրև պետ, և ինքը երկրի շենության համար պատերազմներ էր մղում ամեն կողմից թշնամիների ու իրենց շրջակա սահմանակիցների, մանավանդ պարսից զորքերի դեմ իր կյանքի բոլոր օրերում: Իսկ Մերուժանը նորից գնում է պարսից թագավորի մոտ՝ Մանուելին ամբաստանելու համար:*

***Գլ. ԽԲ.*** *Սրանից հետո յոթ տարի պարսիկներն այլևս չհարունակեցին Հայաստանի սահմանները մտնել և երկիրը խաղաղվեց: Մանուել*

*զորավարի մոտ հավաքվեցին երկրում ցրվածները, եկան մեկտեղացան ու անհոգ ապրում էին, և հայոց Մանուել զորավարը նրանց առաջնորդում էր... Նույնպես բոլոր գավառներում հայոց Մանուել սպարապետը նշանակում է նահապետներ և գավառների տերեր ու խաղաղությամբ կառավարում է բոլորին: Եվ ամբողջ Հայոց աշխարհն ապրում է խաղաղության մեջ, Մանուելի հովանու տակ, որքան ժամանակ կենդանի էր նա: Բոլոր մարդիկ վայելքի մեջ էին. ուտում, խմում, ուրախանում էին Մանուելի տերության այն յոթը տարիներում, մինչև Հայոց աշխարհի բաժանումը և թագավորության պառակտումը:*

*1. **Առլեզ (արալէզ, յարալէզ)** – երևակայական՝ շան կերպարանքով երկնաբնակ կենդանիներ: Հայոց հին հավատքի համաձայն՝ հարություն էին տալիս հանուն հայրենիքի զոհված հերոսներին: Այս տեղեկությունը ցույց է տալիս, որ քրիստոնեության պետական կրոն հռչակումից ավելի քան 70 տարի անց նախաքրիստոնեական հավատալիքները կենսունակ էին ոչ միայն սովորական ժողովրդի, այլև Մամիկոնյանների նման նշանավոր ազնվական տոհմի միջավայրում:*

*2. Այսինքն՝ դրոշակ:*

## ԳԱՀԱԿԱԼԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՄԱՆՈՒԵԼԻ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍԻ

***Գլ. ԽԳ.** Իսկ Մերուժան Արծրունին վաղուց ի վեր, դեռ Արշակ թագավորի ժամանակ, ապստամբվել էր հայոց թագավորի դեմ, ինքնակամ ձեռք էր մեկնել պարսից թագավորին, ընդունել էր մազդեզական կրոնը և ուրացել քրիստոնեական հավատը: Նա շատ անգամ առաջնորդ է դարձել պարսից զորքերին, մեծամեծ չարիքներ էր հասցրել Հայոց աշխարհին և դեռ պարսից թագավորի մոտ էր գտնվում: Ահա այս Մերուժանը պարսից թագավորին գրգռեց և, նրանից շատ զորք առնելով, եկավ հասավ Հայոց աշխարհը: Նա մեծապես պարծեցել էր պարսից թագավորի առաջ, որ կա՛մ Մանուելին բռնելով կապած կտանի պարսից թագավորի մոտ և կա՛մ գլուխը կտրելով նրան կներկայացնի:*

*Նա պարսից զորքի ամբողջ բազմությամբ գալիս հասնում է Հայոց աշխարհը, պարսից զորքի բանակը թողնում է Կորճայք գավառում, իսկ ինքն իր սեփական գնդով, հավաքած հրոսակներով, անջատվում է Արյաց գնդից: Նա մտքում դրել էր՝ գաղտնի, անսպասելի կերպով հարձակվել Մանուելի վրա, իրեն անուն վաստակել. ջանք էր անում*

*ինքը մենակ կատարել գործը, պատերազմի գործն անձամբ գլուխ բերել, որ իրեն պարծանք լինի:*

*... Գուժկան հասավ հայոց Մանուել զորավարին, թե՝ «Ճարդ տես, Մերուժան Արծրունին մեծ գնդով եկել հասել է քեզ վրա»:*

*Այս տեղեկության համաձայն, հայոց գնդի բոլոր զորքերը և Մանուել սպարապետը պատրաստվեցին, ուխտի գնացին Հովհաննես (Մկրտչի) սուրբ ոսկորներին, որ այն գյուղում էին, ուխտ դրին, Աստծուն խնդրում էին, արդար դատավորին օգնության էին կանչում... Մանուելը հրաման է տալիս մանուկ Արտավազդին՝ Վաչեի որդուն, որ նա ևս կանանց հետ գնա, իսկ նա հակառակվում է, չի համաձայնվում:*

*Երբ տիկնոջը[1] ամբողջ տուն ու տեղով ամուր տեղ ուղարկեցին, ապա իրենք էլ սպառազինվեցին, կազմակերպվեցին, պատերազմի համար մի տեղ խմբվեցին: (Մանուելը) նշանները բացած, ծածանվող դրոշակներով, դուրս է գալիս Ավան գյուղից դեպի արևմուտք, և հենց այդտեղ նրա առաջն է ելնում Մերուժանն իր գնդով, որ եկել էր նրանց վրա: Չարագործ, մեղավոր Մերուժանն իր զենքն ու զարդը և իր սաղավարտի նշանը չատերին էր տվել, չատերին իր գնդում իր տեսքն էր տվել, իսկ ինքն իր նշանները չէր կրում: Մանուելը նրանց գունդը տեսնելով՝ իր առյուծի գնդով վարազի պես վրա է հարձակվում, խառնվում է նրանց գնդին, ուշադրություն դարձնելով նրանց վրա, որոնք Մերուժանի նշաններն էին կրում: Շատ ախոյանների գլուխներ կտրեցին, որոնք կրում էին Մերուժանի նշանները, կարծելով թե Մերուժանին սպանեցին, բայց տեսնում էին, որ նա չէ:*

*Այն ժամանակ սպարապետ Մանուելը խոսեց իր նիզակակից Բաբիկի հետ և ասաց. «Տեսնո՞ւմ ես որքան մեզ խաբում է այդ կախարդ Մերուժանը: Բայց առաջ, հաշտության ժամանակ, ես չատ անգամ նրա հետ միասին եմ եղել, ես նրա մի նշանը գիտեմ. երբ նա ձի է հեծնում, նրա ազդրը մինչև ծնկները հուպ չի գալիս, այլ ձիուց զատ է մնում: Ե՛կ երկուսով այս նշանին ուշադիր լինենք, գուցե կարողանանք ճանաչել այն ետ եկած կախարդին»: Ապա երկուսով դիտելով՝ տեսան ու ճանաչեցին Մերուժանին այդ նշանով. նա իրեն կերպարանափոխել էր և իր նշանները չէր կրում: Այն ժամանակ Մանուելը ձայն տվեց, առաջ կանչեց Մերուժանին ու ասաց. «Ա՛յ կախարդ, մինչև ե՞րբ պիտի խաբես մեզ, և քո պատճառով ուրիշներին ջարդել տաս: Քեզ մենք վերջապես ճանաչեցինք, որ այդտեղ կանգնած ես, և մեր ձեռքից քեզ այսօր փրկություն չկա, որովհետև Աստված այսօր քո կատարած չարիքները քո գլխի վրա ածեց և քեզ մեր ձեռքը մատ-*

*նեց»: Իսկ Մերուժանը, երբ այդ լսեց, իսկույն նիզակը ձեռքին առաջ անցավ, Մանուելին ախոյան դուրս եկավ: Բայց որովհետև երկուսն էլ հաղթահասակ մարդիկ էին, նիզակներով իրար հարվածելիս երկուսն էր ձիերից վայր ընկան: Անմիջապես Մանուելի նիզակակից Բաբիկը՝ Սյունյաց գավառի տերը, վրա է հասնում, նիզակով կողից վերից վար խփելով (Մերուժանին) կարում է գետնին, և նա այլևս չի կարողանում վեր կենալ: Իսկ Մանուել սպարապետին նրա ձիապան սպասավորները ձի են հեծցնում: Եվ Մերուժանի գլուխը կտրեցին, ու (նրա) բոլոր զորքերը, երբ տեսան, թե Մերուժանը մեռավ, փախուստի դիմեցին: Իսկ այս կողմից Մանուելի գունդը խրախուսվելով՝ հարձակվեց Մերուժանի գնդի վրա, ջարդեցին, կոտորեցին, կենդանի մարդ չթողին:*

*Բայց մանուկ Արտավազդը Մանուելից գաղտնի գնացել էր պատերազմի. նա սպառազինված, Մանուելի գնդից ծածուկ, գնաց Եփրատ գետի ափը, այնտեղ Մերուժանի գնդից անթիվ սպառազինված մարդ կոտորեց: Իսկ մեկը, որ Մերուժանի նշանն էր կրում, երբ Արտավազդին տեսավ, նրան արհամարհեց, տեսնելով, որ մի կայտառ անմորուք պատանի է, գեղեցիկ դեմքով: Ապա նշանը նիզակին փաթթելով՝ հարձակվեց նրա վրա: Իսկ նա ուժերը լարելով՝ նետով զարկեց նրան, և նետը մարմինը թափանցելով գետին ընկավ: Ապա նիզակն առնելով հարձակվեց փախստականների ետևից և սրի քաշեց Մերուժանի զորքերը: Այդ օրը բոլորից ավելի Վաչեի որդի մանուկ Արտավազդը կոտորած արեց ու ինքը (ետ դարձավ) մեծ անունով և լավ ավարով, որ թշնամու զորքերից կողոպուտ մնաց:*

*Բայց այդ օրը մեծ, անփոխարինելի վնաս է պատահում, որովհետև Վաչեի ձին, գլխի վրա գալով, նրան սպանում է: Նույնպես և Գարջույլ Մաղխազին ձին փախցրեց ու սպանեց, որովհետև երկուսն էլ անվարժ ձիեր էին հեծել:*

*Իսկ Մանուելը գնում հասնում է տիկնոջ բանակը. իրենց հետ տանում են նաև Մերուժանի գլուխը: Բայց Սամուելը՝ Վահանի որդին, Մանուելի հետ չպատահեց, որովհետև նա բանակ էր դարձել: Մանուելի բանակում եղած կանայք, երբ Մերուժանի գլուխը տեսան, մեծ ճիչ ու աղաղակ բարձրացրին, որովհետև կարծեցին, թե այն գլուխը Վահանի որդի Սամուելինն է, որովհետև այն երկուսը՝ Մերուժանն ու Սամուելը, իրար նման էին: Բայց հետո տեսան Մերուժանի գլուխը, որից ծամը կախված էր, իմացան, որ Սամուելինը չէ, այլ Մերուժան Արծրունունը, բայց ասացին. «Այնուամենայնիվ, դա էլ մեր եղբայրն էր»[2]: Ապա բանակ բերին Արտավազդի հոր՝ Վաչեի մարմինը, նույն-*

*պես և Գարջույլ Մաղխազի մարմինը. մեծ սուգ արին ու լացին նրանց վրա: Բերին նաև Մերուժանի նշանը կրող մարդուն, որին Արտավազդն սպանել էր նետով. բոլորը զարմանում էին նայելով, որովհետև նետն ամբողջ մարմնով թափանցել էր... Իսկ պարսից այն զորքերը, որոնց Մերուժանը թողել էր Կորճայք գավառում, երբ լսեցին, թե Մերուժանն սպանվել է, և նրա հետ եղած գունդը ոչնչացել է, իրենք էլ փախան գնացին Պարսից աշխարհը, և Հայոց աշխարհում ընդհանուր խաղաղություն տիրեց:*

*1. Ակնարկը վերաբերում է Հայոց թագուհի Զարմանդուխտին:*

*2. Մերուժան Արծրունին և Սամուել Մամիկոնյանը զարմիկներ էին՝ մորաքրոջ տղաներ:*

## ԱՐՇԱԿ III-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ ՓԱՎՍՏՈՍԻ

***Գլ. ԽԴ.*** *Այս բոլոր գործերը կատարելուց հետո Մանուել զորավար-սպարապետը Արշակունի տիկնոջ և երկու մանուկների՝ Արշակի ու Վաղարշակի հետ Հայոց ամբողջ բանակով, մեծամեծ ավագներով ու նախարարներով գնում հասնում է Կարին գավառը: Բոլոր տանուտերներն էլ նրա հետ էին: Եվ Մանուել սպարապետն իր Վարդանդուխտ դուստրը կնության տվեց Արշակունի մանուկ Արշակին ու իրեն փեսայացրեց. նաև հարսանիք է անում նրա եղբոր՝ Վաղարշակի համար և նրան կին է տալիս Բագրատունի ասպետի դուստրը Սպեր գավառից, որոնք (Բագրատունիները) ի բնե Արշակունյաց տոհմի թագավորների թագակապներն ու թագադիրներն էին եղել: Շատ փառավոր հարսանիք արին, որ մեծ ցնծություն ու ուրախություն պատճառեց ամբողջ Հայոց աշխարհին: Այնուհետև դարձյալ մի տեղ հավաքելով Հայոց աշխարհի բոլոր մարդկանց՝ մանուկ Արշակին թագավորեցրեց Հայոց աշխարհի վրա և Վաղարշակին նրան երկրորդ նշանակեց: Սրանով էլ մեծ ուրախություն ու ցնծություն եղավ ամբողջ Հայոց աշխարհում:*

*Սրանից հետո հայոց զորավար-սպարապետ Մանուելը հիվանդացավ մահաբեր հիվանդությամբ: Նա կանչեց իր Արտաշիր որդուն, նրան հանձնեց իր տանուտիրական իշխանությունն ու իր զորավար սպարապետությունը: Նրան պատվիրեց հնազանդ ու հպատակ լինել Արշակ թագավորին, հավատարիմ լինել, ջանալ և աշխատել, Հայոց աշխարհի համար պատերազմել: «Ուրախությամբ հանձն առ մահ երկրի համար, ինչպես և քո քաջ նախնիները, որովհետև,– ասաց,–*

*դա արդար և Աստծուն ընդունելի գործ է, և երբ այդպես վարվեք, Աստված ձեզ անտես չի անի: Երկրի վրա քաջության անուն թողեք և ձեր արդարությունը երկնքին նվիրեցեք: Մահից ամենևին մի՛ վախենաք, այլ հույս դրեք նրա վրա, որ ամեն ինչ ստեղծեց և հաստատեց: Ձեզ հեռու պահեցեք նենգությունից, պղծությունից և չարությունից ու Տեր Աստծուն ծառայեցե՛ք մաքուր սրտով և հավատարմությամբ: Աստվածապաշտ երկրի համար համարձակ մեռեք, որովհետև հենց այդ մահն Աստծո համար է, նրա եկեղեցիների և եկեղեցական ուխտի, այս աշխարհի բնիկ տերերի՝ Արշակունիների համար»: Սրանից հետո նա հրովարտակ գրեց հունաց թագավորին և նրան հանձնեց Հայոց աշխարհն ու Արշակ թագավորին:*

*Սրանից հետո, երբ նա հիվանդ պառկած էր անկողնում և բոլորը հավաքված էին նրա շուրջը, այնտեղ էին և՛ Արշակ թագավորը, և՛ Վարդանդուխտը՝ թագավորի կինը, և՛ հայոց բոլոր երևելի մարդիկ, տղամարդ թե կին, ապա Մանուելն այս բոլորի առաջ բացեց իր բոլոր անդամները, մերկացավ և ցույց տվեց, որ նրա մարմնի վրա մի դրամի մեծության չափ ողջ տեղ չէր մնացել, այլ խոցված էր պատերազմների մեջ... «Մանկությունից ի վեր ես պատերազմների մեջ եմ մեծացել, ամեն վերք հանձն եմ առել քաջությամբ, և ինչո՞ւ ես բախտ չունեցա պատերազմի մեջ մեռնելու, քան թե այսպես անասունի նման մեռնեի: Որքա՜ն լավ կլիներ, եթե պատերազմի մեջ մեռնեի երկրի համար, որպեսզի եկեղեցիները և Աստծո պաշտոնյաների ուխտը ոտնատակ չլինեին: Ո՞ւր է թե ինձ վիճակվեր մեռնել մեր երկրի բնիկ Արշակունի տերերի համար, մեր կանանց ու որդիների համար, աստվածապաշտ մարդկանց, եղբայրների, ընկերների և մտերիմ բարեկամների համար: Ես շատ հանդուգն էի ինձ պահում, բայց և այնպես ինձ վիճակվեց մեռնել վատթար մահով՝ անկողնում պառկած»:*

*Այս և սրանից էլ ավելի շատ բաներ խոսեց Արշակ թագավորի ու բոլորի առջև: Նաև աղաչեց Արշակ թագավորին ու ասաց. «Ես ապրել եմ Աստծով իբրև ջերմեռանդ քրիստոնյա, ինձ վրա անհուսությամբ լացուկոծ չսարքեք անկարգաբար, հեթանոսների նման: Որովհետև չպետք է լաց լինել նրանց համար, որոնք հույս ունեն մյուս անգամ հարություն առնելու և կենդանանալու Քրիստոսի գալստի ժամանակ, իսկ ես մինչև այժմ ապրել եմ հույսով և երկյուղածությամբ: Բայց դուք աստվածային պատվիրաններից մի՛ շեղվեք, արդարության հոգ տարեք և ավելի շատ ողորմության: Որովհետև Ներսես Մեծ հայրապետը մեզ շարունակ այս էր պատվիրում և ինքն էլ իր կենդանության ժամանակ նույնն էր անում. ինչ որ ինքը գործում էր,*

*նույնն անել սովորեցնում էր ուրիշներին. նա ողորմում էր աղքատնե-րին, տնանկներին, գերիներին, անտիրականներին, օտարականներին, պանդուխտներին, և նաասում էր. «Աստծո առաջ ավելի պատվական բան չկա, քան ողորմություն անելը կամ (աղքատներին) տուրք տա-լը»: Եվ մեռելների վրա լացուկոծ անելը ծանր մեղք էր համարում և իր ապրած ժամանակ այս բանը վերացրեց Հայոց աշխարհից. որով-հետև նրա օրերով ոչ ոք չէր համարձակվում լացուկոծ անել, բայց նրա մահից հետո անմիտ մարդիկ համարձակվեցին այդ բանն անել: Բայց ինձ համար թող ոչ ոք կոծ չանի. մեղապարտ լինի, ով որ անի: Բայց ես իրավունք չունեմ իմ մահից հետո մեկին սաստել, որ չանի, ինչ որ ես չեմ կամենում, այլ ով ինձ սիրում է, իմ հիշատակի համար թող այսպես անի: Պատերազմի մեջ մահից մի՛ վախենանք, որի մեջ ես չմեռա, որովհետև առանց Աստծո ոչինչ չի լինում»:*

*Եվ էլի այսպիսի շատ բաներ խոսեց. իր ձեռքով անչափ շատ գան-ձեր բաժանեց աղքատներին ու կարոտյալներին. իր ստացվածքից շատ մասեր տվեց եկեղեցիներին ու վկայարաններին, շատ գանձ էլ տվեց քահանայապետներին, քահանաներին ու պաշտոնյաներին և հետո ինքն էլ մեռավ:*

*Բայց երբ մեծ Մանուել սպարապետը մեռավ, ոչ ոք ուշադրություն չդարձրեց նրա հրամանին կոծի նկատմամբ, այլ Հայոց աշխարհի բո-լոր մարդիկ՝ ազնվականներ ու շինականներ առհասարակ կոծում, լա-լիս, ողբում էին դառնապես: Որովհետև ամեն մարդ նրան սգում էր ինչպես իր հոր՝ նրա քաղցրության, մարդասիրության, հեզության, հանդարտության, խնամատար բարերարության համար, ողբում էին բարեպաշտ և աշխարհաշեն Մանուելին: Բոլորը բերանները բացած հառաչում էին նրա համար, կարոտագին մղկտում էին իրենց քաջ զորավարի, իրենց փրկչի, իրենց հաղթական, անվանի և բազմարդյուն (սպարապետի համար), որ հեռացավ ու գնաց, բաժանվեց իրենցից:*

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՌԱՋԻՆ ԲԱԺԱՆՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

#### *Դպրություն Զ*

***Գլ. Ա.*** *Բայց հայոց Մանուել զորավարի մահից հետո Արշակի թա-գավորությունն ի վիճակի չեղավ կարգավորվել երկրում, այլ հայոց նախարարներից շատերը զատվեցին, գնացին պարսից թագավորի*[1]

*մոտ. Հայոց աշխարհը նրա ձեռքը մատնեցին և նրանից խնդրեցին Արշակունի թագավոր: Նա մեծ ուրախությամբ հանձն առավ՝ իր կողմից իր խոսքով (թագավոր) նշանակել Հայոց նույն Արշակունի թագավորների տոհմից ու նրա միջոցով Հայոց աշխարհն իրեն գրավել: Ապա նա գտավ նույն տոհմից մի մանուկ՝ Խոսրով անունով, նրա գլխին թագ կապեց և նրան կին տվեց իր Զրվանդուխտ քրոջը, իր բոլոր զորքերը նրա հետ դրեց ու Զիկ նվիրակին դաստիարակ նշանակեց Խոսրով թագավորի համար: Այսպես նրանք ելան եկան Հայոց աշխարհը: Արշակ թագավորը, երբ նրանց տեսավ, տեղի տվեց, քաշվեց գնաց հունաց սահմանները: Եվ թիկունք եղան Արշակ թագավորին հունաց թագավորը[2], իսկ Խոսրովին՝ պարսից թագավորը:*

*Ապա հունաց զորքերը եկան (Արշակ թագավորին) օգնության, որ Եկեղյաց գավառումն էր, իսկ պարսից զորքերը և Խոսրով թագավորը Այրարատ գավառումն էին: Ապա հունաց և պարսից թագավորների դեսպաններն ու պատգամավորներն իրենց մեջ երթևեկություն ունեցան, և երկու թագավորները՝ հունաց և պարսից, իրար հետ խորհուրդ արին և համաձայնության եկան: Նրանք հարմար համարեցին նախ Հայոց աշխարհը երկու բաժին անել իրենց մեջ: Նրանք ասում էին. «Մեր երկուսի միջև ընկած է այս հզոր և հարուստ թագավորությունը. լավ կլինի, որ այս միջոցով թուլացնենք ու խանգարենք այս թագավորությունը. նախ երկու մասի բաժանենք այս երկու Արշակունի թագավորներով, որոնց նշանակեցինք, հետո կաշխատենք նրանց էլ թուլացնել, աղքատացնել և մեր ծառայության ենթարկել, որպեսզի մեր մեջ չկարողանան գլուխ բարձրացնել»:*

*Այսպես մտածելով՝ նրանք երկու մասի բաժանեցին երկիրը[3]. պարսից կողմի բաժինը մնաց Խոսրով թագավորին, իսկ հունաց կողմի բաժինը՝ Արշակ թագավորին: Բայց նրանցից էլ շատ գավառներ այս ու այնտեղ խուզվեցին, կտրվեցին, և երկուսի երկրներից մի փոքր մասը մնաց երկու թագավորներին: Բայց Հայոց թագավորության հիմնական գավառները երկու բաժիններում Հայոց երկու Արշակունի թագավորները՝ Արշակն ու Խոսրովը, սահմաններով խաղաղությամբ բաժանեցին և Հայոց աշխարհի երկու մասերը հնազանդվում էին ամեն մեկն իր թագավորին. բայց Խոսրովի բաժինն ավելի մեծ էր, քան Արշակինը: Եվ երկուսից էլ շատ գավառներ կտրվեցին. և այն ժամանակ ու այնուհետև Հայոց թագավորությունը բաժանվեց, ցրվեց, նվազեց, իր նախկին մեծությունից ընկավ:*

*1. Խոսքը պարսից թագավոր Շապուհ III-ի (383-388) մասին է:*

*2. Այսինքն՝ Թեոդոսիոս I Մեծը:*

*3. Այդ իրադարձությունը տեղի է ունեցել 387 թվականին:*

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՌԱՋԻՆ ԲԱԺԱՆՄԱՆ ՄԱՍԻՆ

***Ղազար Փարպեցին V դարի հայ պատմագրության նշանավոր դեմքերից է: Կրթություն է ստացել իշխան Վահան Մամիկոնյանի հետ՝ վրաց Աշուշա բդեշխի տանը: Հետագայում դարձել է հոգևորական և նշանակվել Էջմիածնի վանքի վանահայր: Հալածանքների է ենթարկվել խավարամիտ կղերականների կողմից, ուստի հարկադրված է եղել թողնել վանքը և փախչել Ամիդ: Այստեղից Վահան Մամիկոնյանին է ուղարկել իր նշանավոր «Թուղթը», որտեղ մերկացնում է Էջմիածնի հետադեմ հոգևորականությանը: Վահան Մամիկոնյանն ստանալով այդ նամակը՝ անհապաղ նրան ետ է կանչում: Վերադարձից հետո նա Վահան Մամիկոնյանի հանձնարարությամբ գրում է իր «Պատմութիւն Հայոց» երկասիրությունը:***

***Փարպեցու «Հայոց պատմությունը» ընդգրկում է V դարի Հայոց պատմությունը՝ ընդհուպ մինչև 485 թ. Վահանի մարզպան նշանակվելը:***

***Ղազար Փարպեցու «Հայոց պատմությունը» արժեքավոր սկզբնաղբյուր է ոչ միայն հայ ժողովրդի, այլև հարևան ժողովուրդների, ինչպես նաև Սասանյան Պարսկաստանի ու հարակից երկրների պատմության ուսումնասիրության համար:***

***Ղազար Փարպեցու բնագրի լավագույն հրատարակությունն իրականացվել է 1904 թ. Թիֆլիսում: Ստորև բերվող հատվածները տրվում են ըստ Բ. Ա. Ուլուբաբյանի աշխարհաբար թարգմանության, որը լույս է տեսել «Ուսանողի գրադարան» մատենաշարով (Երևան, 1982):***

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

#### *Դրվագ Ա*

*Գլ. Զ. Երբ Արշակունյաց թագավորությունը երկու մասի բաժանեցին, Հայոց աշխարհի արևմտյան մասը, իր տերության իշխանությամբ հանդերձ, ենթարկվեց հունաց թագավորին, և արևելյան կողմը դառն ու բռնավոր ծառայությամբ խոնարհեցվեց պարսից արքային: Այնուհետև պարսից արքային վիճակված մասի հայոց նախարարներն իրենց համար թագավոր խնդրեցին Արշակունյաց տոհմից՝ բնիկ նախնյաց կարգի համաձայն: Եվ պարսից Շապուհ արքան, նրանց խնդրանքը կատարելով, նրանց թագավոր տվեց Արշակունյաց տոհմից Խոսրով անունով մեկին:*

*Քանի որ Հայոց նախկին թագավոր Արշակը միահեծան տիրապե-*

*տություն ուներ ամբողջ Հայաստան աշխարհի վրա, երբ տեսավ, որ իրենց տոհմի թագավորության մեծ իշխանությունը խախտվելով ու քայքայվելով՝ ենթարկվեց բաժանման, մեծ տրտմությամբ փոթորկված տարակուսանքի մեջ ընկավ. նախ տեսավ Հայոց աշխարհի՝ երկու թագավորի ծառայության լծի տակ ընկնելը, ապա Հայոց երկրի մեծ մասը՝ լավը, պիտանին ու արգավանդը՝ պարսից արքայի բաժնի մեջ մտնելը: ...Եվ սիրելիների հետ խորհրդի նստած Արշակ թագավորն ալեկոծ հոգով ասաց. «... ընտրելագույնն է ինձ համար՝ թողնել Այրարատյան երկրիս անձկալի ու ամենատենչալի վայրերը, իմ նախնյաց բնիկ ու սեփական տեղերը և գնալ աղքատության հետևից, ապրել երազային կարոտներով, քան թե սիրել այս աշխարհի կյանքը, որ թողնելու ենք ակամա, և բնակություն ընտրել այն մասում, քան անօրենների մեջ ապրել անարգված»:*

*Գլ. Է. Եվ այս ամենի մասին ինքն իրեն խորհելով Արշակ թագավորը լքեց, թողեց իր նախնյաց բարի ու բնիկ ժառանգությունը՝ հոյակապ, հռչակավոր, երևելի գավառն Այրարատյան... և գնաց հունաց թագավորին ծառայելու:*

***Գլ. Թ.** Իսկ միաժամանակ անցնելուց հետո պարսից տիրապետության ներքո գտնվող հայոց նախարարներն իրենց Խոսրով թագավորի դեմ սկսեցին ատելություն տածել...*

*Եվ նախարարները նախ բամբասում էին, ապա գնացին ու պարսից Շապուհ արքայի մոտ բանսարկություն արին, թե իբր «Խոսրովը քեզ սիրող ու հնազանդ է ձևանում, սակայն քո նկատմամբ ցույց տված այս բարեկամությունը սուտ է ու կեղծ, քանի որ գաղտնի ուխտն ու խորհուրդը հունաց թագավորի հետ է, և միշտ հրովարտակներով ու երթևեկ պատգամավորներով բանակցում է նրա հետ խաղաղության համար»:*

*Իսկ պարսից Շապուհ արքան, խնդությամբ ու ախորժալուր ունկնդրությամբ լսելով այդ, հրաման տվեց շտապ հրովարտակով Խոսրովին կանչել իր դուռը: Շապուհը թշնամացած պատժեց նրան՝ շտապ զրկեց Խոսրովին իր թագավորական իշխանությունից և ասաց, որ նա այլևս չի տեսնի Հայոց աշխարհը, և բռնելով պահեց այնտեղ՝ Պարսից աշխարհում: Իսկ երբ Խոսրովն արդեն հեռացված էր թագավորությունից, հայերը Շապուհից իրենց համար խնդրեցին ուրիշ թագավոր: Եվ նա էլ համաձայնելով՝ նրանց վրա թագավոր կարգեց Խոսրովի եղբայր Վռամշապուհին՝ Արշակունյաց տոհմից: Եվ Վռամշապուհին թագավոր դարձնելով ուղարկեց Հայաստան:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

*Գլ. ԾԵ. Վռամշապուհը քանիմեկ տարի թագավորելով մեռնում է, թողնելով Արտաշես անունով մի տասնամյա որդի։ Այն ժամանակ Մեծն Սահակը գնաց պարսից Հազկերտ թագավորի[1] դուռը՝ կապված Խոսրովին խնդրելու, որ Արտաշիրի[2] մահից հետո (կապանքներից) լուծվելով՝ արձակ պահվում էր Անհուշ բերդում Վռամի ժամանակ։ Հազկերտը համաձայնվելով կատարում է նրա խնդրանքը, (Խոսրովին) տերությունը տալով ուղարկում է Հայաստան։ Նրանից հետո Հազկերտը ոչ թե նրանցից, այլ իր Շապուհ որդուն[3] թագավորեցրեց հայոց վրա այսպիսի չար դիտավորությամբ, որ նախարարները դրանով նրա մոտ լինելով՝ նրան կրնտելանան խոսակցությամբ, առնելտալով, խնջույքներով, որսի զբոսանքներով, այլև խնամությամբ նոր ազգականություններով կմոտենան, և գուցե հնար լինի նրանց սայթաքեցնել դեպի մազդեզական կրոնը, որով բոլորովին կանջատվեն հույներից։ Անմիտը չգիտեր, թե «Տերը ցրում է հեթանոսների խորհուրդները»[4], թեպետ միաժամանակ հաջողվեց (նրա խորհուրդը), որովհետև Համազասպը[5] մեռավ և Սահակն էլ մեծ սգի մեջ ընկավ, ոչ ոք հայոց գնդերը չհավաքեց, չմիաբանեց։ Ուստի Շապուհը հեշտությամբ մուտք գործեց մեր աշխարհը՝ իր հետ բերելով Հրահատին և բոլոր աքսորականներին. բայց նա չկարողացավ նախարարների համակրությունը շահել, այլ բոլորը նրան ատեցին և թագավորաբար չէին մեծարում որսի կամ խաղերի ժամանակ։*

***Գլ. ԾԶ.*** *Չորս տարի անարգաբար թագավորելուց հետո Շապուհը լուր է ստանում իր հոր հիվանդության մասին և գնում է շտապով, իր տեղակալին ու զորագլխին հրամայելով, որ հայոց մեծամեծներին բռնի և տանի Պարսկաստան։ Բայց երբ Շապուհը Տիզբոն հասավ, մեռավ նրա հայր Հազկերտը...։*

***Գլ. ԾԸ.*** *Իսկ (Վռամ) թագավորը հաշտություն հաստատելով՝ (նախարարների) հանցանքները մոռացության տալու թուղթ է կնքում և նրանց խնդրանքով թագավոր է նշանակում Վռամշապուհի որդի Արտաշեսին՝ փոխելով (անունը), Արտաշիր կոչելով, և նրան է վստահում Հայաստանն առանց պարսիկ վերակացուի։*

*Գլ. ԿԳ. Բայց Հայոց Արտաշիր թագավորը սկսեց թաղվել անչափ անառակ ցանկությունների մեջ այն աստիճան, որ բոլոր նախարար-*

*ները նրանից զզվեցին: Նրանք եկան Մեծն Սահակի մոտ, բողոք բարձրացրին և նրան էլ հրավիրեցին իրենց օգնելու, որպեսզի (Արտաշիրի) վրա չարախոսեն պարսից թագավորի առաջ, իրենց թագավորին դեն գցեն և պարսիկ բերեն աշխարհին կառավարող: Իսկ (Մեծն Սահակը) ասաց. «Ձեզ սուտ չեմ հանում, ինքս էլ լսել եմ նրա ցավալի, ամոթալի արարմունքները, շատ անգամ հանդիմանել եմ, բայց նա ուրացել է: Արդ՝ պետք է մի կարճ ժամանակ տանել այդ մարդու թերությունը, մինչև՝ մտածենք մի ելք գտնենք հունաց Թեոդոս կայսեր միջոցով, բայց ո՛չ թե անօրեններին մատնենք և ծաղր ու խայտառակ լինենք»:*

*Իսկ նրանք չէին կամենում, ջանք էին անում նրան իրենց համամիտ դարձնել: Բայց նա ասաց. «Քավ լիցի, որ ես իմ մոլորված ոչխարը մատնեմ գայլերին...»:*

*Իսկ նախարարները մտածելով, թե խաբելու նպատակով է այդպես անում, որպեսզի իրենց անելիքը հետաձգել տա և թագավորին պատրաստի, միաբերան ասում են. «Որովհետև դու չկամեցար մեզ հետ համակերպվել, որ նա չթագավորի, ահա մենք էլ չենք կամենում, որ դու մեզ քահանա լինես»: Եվ բոլորը միաբանությամբ ելան գնացին պարսից Վռամ թագավորի մոտ, մի ոմն փառամոլ քահանայի՝ արծկեցի Սուրմակի հետ, չարախոսելու իրենց Արտաշիր թագավորի վրա և Մեծն Սահակի վրա, թե նրանք հույների կողմն են թեքվել:*

***Գլ. ԿԴ.*** *Այն ժամանակ պարսից Վռամ թագավորը արքունիք կանչեց Հայոց Արտաշիր թագավորին և Մեծն Սահակին, և խնդրում էին, որ [Սահակը] Արտաշիրին ամբաստանի, իսկ նա հրաժարվեց առհասարակ որևէ բան ասելուց, չար կամ բարի:*

*Այն ժամանակ Վռամը գայրացած՝ մեծ հրապարակում քննություն է կատարում, և ուշադրություն չդարձնելով Արտաշիրի խոսքերին՝ հոժարությամբ լսում է չարախոսների ասածները, մանավանդ Սուրմակի խիստ աղտեղի խոսքերը: Որովհետև թշնամաբար տրամադրված հակառակասեր նախարարները նրան էին խոստացել եպիսկոպոսապետության աթոռը, ուստի ինքնասիրությունից դրդված՝ իր լեզուն սպանիչ սուր դարձրեց: Վերջապես Վռամը հրամայեց՝ թագավորությունն առնել Արտաշիրից և նրան (Պարսկաստանում) արգելել ու նրա ցեղի բոլոր գույքը հարքունիս գրավել, նույնպես և Մեծն Սահակին, կաթողիկոսական տունը հարքունիս գրավել, և նրա փոխարեն հայոց եպիսկոպոսապետության աթոռը տալ այն Սուրմակին: Իսկ նախարարներին ուղարկեց մեծամեծ պարգևներով՝ մի պարսիկ մարզպանի հետ, որի անունն էր Վեհմիհրշապուհ:*

*1. Խոսքը Պարսկաստանի Հազկերտ I թագավորի (399-420) մասին է:*

*2. Ակնարկում է պարսից Արտաշիր II թագավորին (379-383):*

*3. Հազկերտ I-ի որդի Շապուհը Հայաստանում թագավորել է 415-419 թվականներին:*

*4. **Սաղմոս**, ԼԲ, 10:*

*5. Խոսքը Հայոց սպարապետ Համազասպ Մամիկոնյանի մասին է:*

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՆ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### Դրվագ Ա

***Գլ. ԺԲ.*** *[Հայոց Վռամշապուհ թագավորից] հետո մեռավ նաև պարսից Շապուհ արքան, և թագավորեց նրա որդի Վռամը, որ էր Կրման արքան[1]: Հայերը նրանից խնդրեցին իրենց թագավոր դարձնել նույն Խոսրովին՝ Վռամշապուհի եղբորը, որին հայերն առաջ մեկ անգամ արդեն Հայոց գահից զրկել էին տվել՝ պարսից Շապուհ արքայի առաջ բանսարկելով: Եվ Վռամը կատարեց նրանց խնդիրքը. դարձյալ թագավորեցրեց Խոսրովին, որ շատ ծեր մարդ էր: Եվ Խոսրովը գալով Հայոց աշխարհ ու մնալով ութ ամիս՝ վախճանվեց[2], միացավ նախնիներին:*

*Պարսից Վռամ արքայի մահից հետո Պարսից երկրի վրա թագավորեց Վռամի եղբայր և Շապուհի որդի Հազկերտը: Եվ Հազկերտը, չկամենալով Հայոց աշխարհի վրա թագավորեցնել Արշակունյաց տոհմից որևէ մեկին, սրանց վրա թագավոր կարգեց իր որդուն, որի անունն էր Շապուհ՝ իր հոր անվամբ:*

*Հազկերտը չարաչար խորհուրդներ ուներ իր մտքում: Առաջինն այս էր, թե Հայոց աշխարհը մեծ է ու օգտակար, սահմանակից ու դրացի Հունաց թագավորությանը, որի տիրապետությանը հնազանդվել են շատերն Արշակունյաց տոհմից: Մտածում էր, թե, գուցե նրանք, որ մեր և հունաց տիրապետության ներքո են գտնվում, իբրև տոհմակից եղբայրներ սեր ու կարեկցություն զգան միմյանց հանդեպ, իբրև իրար հետ համերաշխած՝ խոսքները մեկ անեն, համաձայնության գալով՝ Հունաց թագավորի հետ խաղաղություն հաստատեն և, համաձայնելով նրան հնազանդվել, ապստամբեն մեր դեմ: Եվ ինչպես շատ անգամ նրանք մեզ անհանգստություն են պատճառել, այժմ էլ նրանց գումարելով՝ առավել ևս, մեզ անհանգիստ կանեն պատճ-*

*բազմով: Եվ, երկրորդ, որ նրանք օտար են մեր հավատին, ատում են մեզ և հույների հետ ունեն նույն հավատն ու նույն օրենքները: Արդ, եթե Հայոց աշխարհի վրա թագավոր լիներ մեր ազգից մեկը, մեր թագավորությունն ապահով կլիներ ամեն տեսակ այդպիսի կասկածներից: Նրանք միշտ ահ ու դողով կծառայեն մեզ ու թշնամական կամ վնասակար ոչինչ չեն խորհի մեր դեմ: Հնարավոր է նաև, որ նրանք հետզհետե ընտելանան և դառնան մեր հավատին՝ շնորհիվ միմյանց հետ հաճախակի ունենալիք զրույցների, ամենօրյա բարեկամության, որսերի, զվարճությունների ու խաղերի որ կլինեն միմյանց հետ: Այլև ամուսնական փոխադարձ տուր ու առով հաղորդվելով միմյանց՝ նրանք այնուհետև կբաժանվեն նրանց [հույների] սիրուց ու հավատից:*

*Թագավորական գահին երկար չմնալով՝ Հազկերտը մեռավ: Նույն օրն էլ նրա որդի Շապուհին, որ Արշակունու փոխարեն թագավոր էր կարգվել մեր աշխարհի վրա, պալատականները դավով հենց արքունիքում սատկեցրին: ... Հազկերտից հետո Արյաց աշխարհի վրա թագավորեց նրա որդի Վռամը[3]: Հայոց աշխարհի իշխաններն էլ, գալով պարսից արքա Վռամի մոտ, իրենց համար թագավոր խնդրեցին Արշակունյաց տոհմից: Եվ նա թագավոր կարգեց Հայոց թագավորների տոհմից Վռամշապուհի որդի Արտաշեսին:*

***Գլ. ԺԳ.*** *Արտաշեսը երիտասարդ էր ու խզամոլ և թագավորությունը վարում էր շատ անառակություններով: Իսկ Հայոց նախարարները, չկարողանալով հանդուրժել Արտաշես թագավորի այս զեղխ ու մոլական վարքը, միահամուռ հավաքվեցին Հայոց մեծ քահանայապետ Սուրբ Սահակի մոտ, որ որդին էր Սուրբ Ներսեսի, և նրան ասացին. «Այլևս չենք կարող հանդուրժել թագավորի այդօրինակ անօրեն ու պիղծ գործերը, քանի որ լավ ենք համարում մեռնել, քան թե ամեն օր տեսնել ու լսել այսպիսի աղտեղություններ: ... Արդ՝ նախ, դու պարտավոր ես այսպիսի անտանելի աղետը վերացնելու հնար գտնել ու մեջտեղից հանել այնպիսի ամբարիշտ թագավորին, որն անհավատի պես բացահայտ արհամարհանքով ոտնատակ է տալիս սրբությունը և աներկյուղ կամակորությամբ գործում է աղտեղի անառակություններ»:*

*Եվ այս խոսքերը լսելով, Հայոց Սուրբ քահանայապետ Սահակը պատասխանեց, ասաց. «Ոչ թե իբրև նոր մի բան ձեզնից լսած լինելով, գիտեմ ձեր այդ ասածները: Գիտեմ նաև, որ սրտի կսկիծով եք ասում այդ բաները: ... Սակայն, այժմ ի՞նչ հնարավորություն կա դրությունից ելնելու համար, այն պետք է բոլորը քննեն ու գտնեն»:*

*[Նախարարները] բոլորը միասին պատասխանեցին Սուրբ կաթողիկոսին, ասացին. «Մենք այդ վիճակից ոչ մի ելք կամ հնար չենք կարող գտնել, բացի պարսից թագավորին բողոքելուց, որպեսզի Արտաշեսին հեռացնի թագավորությունից, որը ժառանգելու արժանի չեղավ ինքը: Դրանից բացի ուրիշ ոչինչ ո՛չ իմանալ կարող ենք, ո՛չ կատարել: Բայց խնդրում ենք քեզ՝ այս խորհրդի մեջ միաբան լինել մեզ հետ: Եվ պետք չէ թագավորի այսպիսի անսուրբ ու պիղծ գործերին լինել կցորդ»:*

*... Իսկ Հայոց Սուրբ հոգևոր կաթողիկոս Սահակը, երբ այս բոլորը լսեց նախարարներից և ստույգ իմացավ, որ նույն մտքի ու խորհրդի մեջ հաստատ են բովանդակ աշխարհի ավագները, այսպես դիմեց բոլորին. «... Իսկ այն առթիվ, որ ասում եք՝ միաբանվեմ ձեզ հետ, քա՜վ լիցի, որ ես մատնիչ լինեմ մեր ճշմարիտ հավատին և իմ հոտի մոլորյալ ոչխարը հանձնեմ անհավատներին՝ ծանակելու: ... Եվ ինչպե՞ս սակավ մեղք ունեցողին մատնենք ամենաամբարիշտներին, որ տանեն-սպանեն: Քավ լիցի, որդիք, մի՛ ունեցեք այդպիսի դիտավորություն և ձեր նախնիներից ոմանց պես, մի՛ ջանացեք կորցնել բնիկ ձեր [Արշակունի] տերերին»:*

*Եվ Հայոց աշխարհի ավագներն ու տանուտերները սաստիկ զայրացած այլևս չկամեցան մնալ քահանայապետ Սահակի մոտ:*

*Գլ. ԺԴ. Եվ այնուհետև միաբանված գնացին պարսից արքունիքը, այնտեղ ներկայացան Վռամ արքային:*

*... Արյաց թագավորը, արքունի ամբողջ ավագանու հետ միասին, Արտաշեսին մեղադրողներից լսեց, թե «Բնավ ինչի՞ է պետք թագավորը, թո՛ղ մի պարսիկ իշխան գա ժամանակով և մեզ վրա լինի վերակացու, որպեսզի մեզանից յուրաքանչյուրի հպատակությանն ու անհպատակությանը տեղյակ դառնալով հայտնի ձեզ»:*

*...Եվ Վռամը, արքունի ավագանիով հանդերձ այս լսելով՝ չատ ուրախացավ: Այնուհետև կարգադրեց անմիջապես Արտաշեսից վերցնել թագավորությունը՝ դրա հետ միասին, կաթողիկոսական աթոռն էլ՝ Սուրբ Սահակից հարքունիս գրավել, որովհետև նա չէր միաբանել Հայոց նախարարների հետ և չէր տվել իր վկայությունը: Եվ այսպես գլուխ գալով կատարվեց պարսից թագավորի հրամանը:*

*1. Նկատի ունի Վահրամ (Վռամ, Բահրամ) IV-ին (388-399):*

*2. Խոսրով IV-ը երկրորդ անգամ թագավորել է 414-415 թվականներին: Իրականում այս իրադարձությունների ժամանակ պարսից թագավորը ոչ թե Վռամ IV-ն էր, այլ Հազկերտ I-ը:*

*3. Խոսքը Վահրամ (Վռամ, Բահրամ) V Գոռի (420-439) մասին է:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՄԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

### *Գլ. ԿԸ. ՈՂԲ՝ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ՑԵՂԻՑ ԵՎ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏՈՒԹՅԱՆ՝ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ ՏՈՀՄԻՑ ԴԱԴԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ*

*Ողբ եմ քեզ, Հայոց աշխարհ, ողբում եմ քեզ, բոլոր հյուսիսային ազգերի մեջ վեհագույնդ, որովհետև վերացան թագավորդ ու քահանադ, խորհրդականդ և ուսուցանողդ. վրդովվեց խաղաղությունը, արմատացավ անկարգությունը, խախտվեց ուղղափառությունը, հիմնավորվեց տգիտությամբ չարափառությունը:*

*Խղճում եմ քեզ, Հայաստանյայց եկեղեցիդ բեմիդ բարեկարգությունից անշքացած, քաջ հովվից և հովվակցից զրկված: Այլևս չեմ տեսնում քո բանավոր հոտը դալար տեղում և հանգիստ ջրերի մոտ սնվելիս և ոչ էլ փարախի մեջ հավաքված՝ գայլերից զգուշանալու համար, այլ ցիրուցան եղած անապատներում և գահավեժ տեղերում:*

*Ավա՜ղ այս զրկանքներին, ավա՜ղ այս թշվառ պատմությանը: Ի՞նչպես դիմանամ այս ցավերին, ի՞նչպես ամրապնդեմ միտքս ու լեզուս և հայրերիս հատուցեմ խոսքով ծնունդի և սնունդի փոխարեն: Որովհետև նրանք ինձ ծնեցին և սնեցին իրենց տված ուսումով և ուրիշների մոտ ուղարկեցին կատարելագործվելու: Եվ մինչ նրանք սպասում էին մեր դարձին, որ փառավորվեին իմ ամենիմաստ գիտությամբ և լիակատար պատրաստությամբ, և մենք էլ Բյուզանդիայից շտապ-շտապ դիմելով, հույս ունեինք հարսանիքում պարել, խիզախ, և արագ շարժումներով, և առագաստի երգեր երգել,- այժմ, այդ ուրախության փոխարեն, գերեզմանի վրա ողբեր եմ ասում, ողորմելի հառաչելով. նույնիսկ չհասցրի տեսնել նրանց աչքերի փակվելը, լսել նրանց վերջին ձայնն ու օրհնությունը[1]:*

*Այսպիսի վշտով խեղդվում եմ, մեր հոր կարոտով մաշվում: Ո՞ւր է այն քաղցր աչքերի հանդարտությունը ուղիղների համար և ահավորությունը շեղվածների համար. ո՞ւր է այն զվարթ շրթունքների ժպիտը լավ աշակերտներին հանդիպելիս, ո՞ւր է այն բարյացակամ սիրտը, որ հետևողներ էր գրավում, ո՞ւր է երկայն ճանապարհները հեշտացնող հույսը, նեղություններից հանգստացողը, կորավ ժողովուրդը, ծածկվեց նավահանգիստը, լռեց խրախուսիչ ձայնը:*

*Ո՞վ այսուհետև պետք է հարգի մեր ուսումը, ո՞վ պետք է ուրախանա իր՝ աշակերտիս, առաջադիմությամբ, ո՞վ հայրական գվարճությունը պիտի արտահայտի՝ մասամբ իր՝ որդուց հաղթվելով: Ո՞վ պետք է զսպի առողջ վարդապետությանը հակառակ եկողների հանդգնությունը, որոնք ամեն բանով քանդված ու քայքայված՝ շատ ուսուցիչներ են փոփոխում և բազմաթիվ գրքեր, ինչպես ասաց հայրերից մեկը. ամեն խոսքի առթիվ նրանք հավասարապես նեղանում են, և մարդկանց համար չար օրինակ են դարձնում մեզ ծաղրելն ու արհամարհելը, իբրև անհաստատ և որևէ պիտանի արվեստից զուրկ: Ո՞վ պետք է նրանց պապանձեցնի սաստելով և մեզ սփոփի գովելով և չափ դնի խոսքի և լռության:*

*Երբ մտածում եմ այս բաների մասին, սիրտս հառաչում և արտասվում է և ցանկանում եմ տխրալից և սգավոր խոսք ասել: Եվ չգիտեմ ինչպե՞ս հորինեմ իմ ողբը և կամ ո՛ւմ արտասվեմ. - արդյոք իմ Թշվառ մանուկ Թագավորի՞ն[2], որ վատթար խորհրդակցությամբ իր ցեղով հանդերձ դեն նետվեց և նախքան մահով մեռնելը անարգաբար աթոռից կործանվեց, թե ինձ, որի գլխից վերցվեց փառավորող գեղեցիկ կյանքին օգտակար պսակը, արդյոք իմ հո՞րն ու քահանայապետին, այն վսեմ մտքին, որ ուր գնում, տանում էր կատարյալ խոսքը, որով կառավարում էր և բարեկարգում, և սանձերը բուռը հավաքած՝ ուղղություն էր տալիս դեմքերին ու սանձահարում էր օտարոտի լեզուները. թե ինձ, նրա հոգու խանդից զրկվածիս ու տնանկիս. արդյոք իմ ծնողի՞ն, այն վարդապետության աղբյուրը, որ ոռոգում էր արդարությունը և իբրև հեղեղ դուրս էր քշում ամբարշտությունը, թե ինձ, նրա խրատները խմելու ծարավից ցամաքածիս ու թառամածիս. արդյոք մեր երկրին արդեն եկա՞ծ աղետները, թե՞ ապագայում սպասվածները:*

*Ո՞վ մեզ այս բաներում ճառակից կլինի՝ մասնակցելով մեր տրտմությանը, ո՞վ մեզ կընկերանա՝ ցավակցելով մեր ողբին, կամ արձանների վրա փորագրելու: Զարթի՛ր, Երեմիա, զարթի՛ր և մարգարեանալով հանդերձ ողբա այն, ինչ թշվառություններ որ կրեցինք և ինչ դեռ պիտի կրենք. գուշակի՛ր, որ տգետ հովիվներ պետք է երևան գան, ինչպես (գուշակեց) Զաքարիասը իսրայելացիների համար[3]:*

***Ուսուցիչները** տխմար ու ինքնահավան, իրենք իրենցից պատիվ գտած և ոչ Աստծուց կոչված, փողով ընտրված և ոչ Սուրբ Հոգով, ոսկեսեր, նախանձոտ, թողած հեզությունը, որի մեջ Աստված է բնակվում, և գայլ դարձած գիշատում են իրենց հոտերը:*

***Կրոնավորները*** *կեղծավոր, ցուցամոլ, սնափառ, պատվամոլ, քան թե աստվածասեր:*

***Վիճակավորները*** *Հպարտ, ղատարկապորտ, ղատարկախոս, ծույլ, գիտություններն ու վարդապետական գրվածքներն ատող, առևտուր և կատակերգություններ սիրող:*

***Աշակերտները*** *սովորելու մեջ ծույլ, սովորեցնելու մեջ փութաջան, որոնք դեռ չսովորած՝ աստվածաբան են:*

***Աշխարհականները*** *ամբարտավան, ստահակ, մեծախոս, աշխատանքից խուսափող, արբեցող, վնասակար, ժառանգությունից փախչող*[4]*:*

***Զինվորականները*** *անարի, պարծենկոտ, զենք ատող, ծույլ, ցանկասեր, թուլամորթ, կողոպտիչ, գինեմոլ, ելուզակ, ավազակներին համաբարո:*

***Իշխանները*** *ապստամբ, գողերին գողակից, կաշառակեր, կծծի, ժլատ, ագահ, հափշտակող, երկիր ավերող, աղտեղասեր, ստրուկներին համախոհ:*

***Դատավորները*** *տմարդի, ստախոս, խաբող, կաշառակեր, իրավունքը չպաշտպանող, անկայուն, ընդդիմացող:*

*Եվ առհասարակ սերն ու ամոթը ամենքից վերացած:*

*Եվ ի՞նչ կա այս բոլորի դիմաց, եթե ոչ այն, որ Աստված մեզ անտես է արել, և տարրերը փոխել են իրենց բնույթը, գարունը երաշտացած, ամառը սաստիկ անձրևային, աշունը ձմեռ դարձած, ձմեռը սաստիկ ցուրտ, մրրկալից և երկարատև: Քամիները բքաբեր ու խորշակաբեր, ցավեր տարածող, ամպերը կայծակներ թափող, կարկտաբեր. անձրևներն անժամանակ և անօգուտ, եղանակը դաժան, եղյամաբեր. ջրերի ավելանալը անօգուտ, իսկ պակասելը՝ չափազանց. հողի պտուղների անբերրիություն և անասունների անաճելություն, այլև երկրաշարժեր և սասանումներ: Եվ այս բոլորի վրա ամեն կողմից խռովություն, համաձայն այն խոսքի, թե ամբարիշտներին խաղաղություն չկա:*

*Որովհետև (մեզ) տիրեցին խստասիրտ ու չար թագավորներ, որոնք ծանր, դժվարակիր բեռներ են բարձում, անտանելի հրամաններ են տալիս. կառավարիչները կարգ չեն պահպանում, անողորմ են, սիրելիները դավաճանված են, թշնամիները զորացած, հավատը ծախվում է այս ունայն կյանքի համար: Ավազակներ են գալիս անհետանում և շատ կողմերից. տները թալանվում են, ստացվածքները հափշտակվում, գլխավոր մարդիկ կապվում են, հայտնի անձեր բանտարկվում են, դեպի օտարություն են աքսորվում ազնվականները,*

*անթիվ նեղություններ են կրում ռամիկները, առնվում են քաղաքնե-րը, քանդվում են ամրոցներ, ավերվում են ավաններ, հրդեհվում են շինություններ, անվերջ սովեր և հիվանդություններ և բազմատեսակ համաճարակներ: Աստվածապաշտությունը մոռացված է, և կա դժոխքի ակնկալություն*[5]*:*

*Սրանից թող փրկի Քրիստոս Աստված մեզ և բոլորին, որոնք ճշմարտությամբ երկրպագում են նրան: Նրան փա՛ռք բոլոր արա-րածներից, ամեն:*

*1. Ակնարկում է իր ուսուցիչներ Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի մահը, որ տեղի է ունեցել 439-440 թվականների միջոցին:*

*2. Խոսքը Արտաշես IV (Արտաշիր) Թագավորի (423-428) մասին է, որը գահ էր բարձրացել պատանի հասակում:*

*3. **Զաքարիա**, ԺԱ, 16:*

*4. Հավանաբար խոսքը երկիրը, հայրենիքը լքողների մասին է:*

*5. Ուսումնասիրողները իրավացիորեն նշել են, որ նկարագրված բացասա-կան երևույթները ոչ այնքան այն օրերի հայաստանյան իրականության արտա-ցոլումն են, որքան հայրենասեր հեղինակի վշտահեր հոգու անկեղծ ճիչը:*



ԲԱԺԻՆ ԵՐԿՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍԱՍԱՆՅԱՆ ԻՐԱՆԻ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ

## (V–VII դարեր)

## I. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՏՆՏԵՍԱԿԱՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ԻՐԱՎԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ

### ԵՂԻՇԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՄԱՆԸ ՀԱՋՈՐԴՈՂ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Եղիշեն V դարի հայ ամենաերևելի պատմագիրներից է: Նա հեղինակ է բազմաթիվ երկասիրությունների, սակայն առավել հայտնի է նրա «Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» աշխատությունը, որը գրել է Դավիթ Մամիկոնյանի հանձնարարությամբ: Եղիշեն եղել է Վարդան Մամիկոնյանի քարտուղարը և գործուն մասնակցություն է ունեցել իրադարձություններին:***

***Աշխատությունը, որ բաղկացած է յոթ գլխից (եղանակ) մանրամասն նկարագրում է ընդդեմ պարսկական տիրապետության հայերի ազատագրական պայքարի մանրամասները: Այն գրված է ջերմ հայրենասիրական շնչով, պատկերավոր, գեղեցիկ լեզվով: Եղիշեի երկը հրատարակվել է քառասուն անգամ, թարգմանվել է ֆրանսերեն, ռուսերեն, անգլերեն, գերմաներեն: Բնագրի լավագույն հրատարակությունն իրականացրել է Ե. Գ. Տեր-Մինասյանը (Երևան, 1957): Ստորև տրվող հատվածները բերվում են ըստ Ե. Տեր-Մինասյանի աշխարհաբար թարգմանության, որը լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարով (տե՛ս Եղիշե, Վարդանի և Հայոց պատերազմի մասին, Երևան, 1971):***

*ՎԱՐԴԱՆԻ ԵՎ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ*

ԺԱՄԱՆԱԿԸ

*Երբ Արշակունյաց ցեղը վերացավ, Հայոց աշխարհին տիրեց պարսիկ Սասանի ցեղը, որ իր իշխանությունը վարում էր մոգերի կրոնի*

*համաձայն և չատ անգամ կռիվ էր մղում նրանց հետ, ովքեր չէին ընդունում նույն կրոնը. սկսելով Տիրանի որդի Արշակ թագավորի օրերից՝ կռվում էր մինչև Վռամշապուհի որդի Հայոց Արտաշես արքայի վեցերորդ տարին: Եվ երբ սրան էլ զրկեց թագավորությունից, իշխանությունն անցավ հայոց նախարարներին, որովհետև թեպետև հարկը պարսից արքունիքն էր գնում, սակայն հայոց հեծելազորն ամբողջապես նախարարներն էին առաջնորդում պատերազմի ժամանակ: Այս պատճառով էլ աստվածապաշտությունը բաց ճակատով ու ինքնիշխան փայլում էր Հայոց աշխարհում, արքայից արքա Շապուհի թագավորության սկզբից մինչև Վռամի որդի արքայից արքա Հազկերտի[1] երկրորդ տարին, որին՝ սատանան իրեն գործակից գտավ, և հավաքված ամբողջ թույնը դուրս թափեց և լցրեց նրան ինչպես թունավորված նետերով լի կապարճ: Եվ սկսեց հոխորտալ անօրենությամբ, գոռոզանում էր և աղմկելով քամի էր բարձրացնում աշխարհի չորս կողմերը, և մեզ, Քրիստոսի հավատացյալներիս, իրեն թշնամի և հակառակորդ էր ներկայացնում և նեղվում ու տագնապում էր անխաղաղասեր կյանքով:*



***Թեոդոսիոս II***

*Որովհետև նրան չատ սիրելի էին խռովությունն ու արյունահեղությունը, այդ պատճառով էլ ինքն իր մեջ ալեկոծվում էր, թե ո՞ւմ վրա թափեմ դառն թույներս կամ ո՞ւր արձակեմ բազմաթիվ նետերս: Եվ սաստիկ հիմարության պատճառով ինչպես կատաղի գազան հարձակվեց Հունաց երկրի[2] վրա, հարվածեց մինչև Մծբին քաղաքը և ասպատակ սփռելով՝ ավերեց հոռոմների չատ գավառներ և հրդեհեց բոլոր եկեղեցիները. ավար ու գերի հավաքեց և ահաբեկեց երկրի ամբողջ զորքը:*

*Իսկ երանելի Թեոդոս կայսրը[3], որովհետև խաղաղասեր քրիստոնյա մարդ էր, չկամեցավ նրա դեմ պատերազմի դուրս գալ, այլ Անատոլ անունով մի մարդու, որ Արևելքի նրա սպարապետն էր, չատ գանձերով նրա մոտ ուղարկեց: Եվ բռնեց ու նրա ձեռքը տվեց այն պարսիկ մարդկանց, որոնք քրիստոնյա լինելու պատճառով փախել էին և գտնվում էին կայսեր քաղաքում: Եվ այն*

*ամենը, ինչ որ ասաց [Հազկերտը] ժամանակին, [Թեոդոսը] կատարեց նրա կամքի համաձայն և իջեցրեց նրա մեծ բարկությունը. և այսպիսով նա վերադարձավ իր քաղաքը՝ Տիզբոն:*

*Երբ անօրեն իշխանը տեսավ, որ իր չարությունը հաջողվեց, սկսեց մի այլ խորհուրդ էլ մտածել, ինչպես մի մարդ, որ բորբոքված կրակի մեջ շատ վառելափայտ է ավելացնում: Որովհետև որտեղից մի քիչ կասկած ուներ, այնտեղից լիովին ապահովվեց. այդ պատճառով էլ քրիստոնյաների սուրբ ուխտից շատերին խախտեց՝ մեկին սպառնալի խոսքերով, մյուսին շղթաներով ու տանջանքներով, երրորդին չարաչար մահով սպանելով: Հափշտակում էր նրանց ստացվածքն ու կալվածքները և մեծ անարգանքով տանջում էր բոլորին:*

*1. Սա Վռամ V-ի որդի Հազկերտ II-ն է (439-457):*

*2. «Հունաց երկիր» արտահայտությունը տվյալ դեպքում հոմանիշ է Բյուզանդական կայսրությանը:*

*3. Խոսքը Բյուզանդիայի Թեոդոսիոս II Փոքր կայսեր (408-450) մասին է:*

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՆ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄԱՐԶՊԱՆԱԿԱՆ ՎԱՐՉԱՁԵՎԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Դրվագ Ա*

***Գլ. ԺԴ.** ...Եվ այսպես, [Հայոց] Արտաշես [թագավորի] վեցերորդ տարում վերացավ Արշակունյաց տոհմի թագավորությունը և Հայոց աշխարհն ընկավ պարսից անօրեն իշխանության ծառայության լծի տակ: Եվ հայոց իշխաններն էլ, իբրև Արտաշես [թագավորին] մատնելու վարձ, պարսից թագավորից ստանալով պատիվներ ու մեծարանքներ, հեռացան արքունիքից և եկան իրենց աշխարհը:*

***Գլ. ԺԵ.** Եվ այնուհետև, նախ պարսից Վռամ արքայի կողմից Հայոց աշխարհն ուղարկվեց պարսիկ մարզպան[1], և հետո էլ Հայաստանը վերջնականապես ու ամբողջովին ընկավ անօրեն պարսից ազգի տիրապետության լծի տակ:*

*1. Հայաստանի առաջին մարզպան է նշանակվել Վեհմիհրշապուհը (428-438), որին փոխարինել է Վրաստանի մարզպան Վասակ Սյունին (438-451):*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ I ԿԱՅՍԵՐ ՀՐՈՎԱՐՏԱԿԸ[1] ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՌԱԶՄԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍԻՆ

**Հուստինիանոս կայսրը Ջետայնին[2] Հայաստանի, Պողեմոնյան Պոնտոսի և ազգությունների փառավորյալ զորավարին**



*Հուստինիանոս I կայսր*

*Շնորհիվն Աստուծո, ստանալով հռոմայեցիների իշխանությունը, մենք, մղված հոգատարությունից և խոհեմ կշռադատելով գտանք, որ անհրաժեշտ է Հայաստանի, Պողեմոնյան Պոնտոսի և ազգությունների համար սույն հրովարտակով[3] հիմնադրել հատուկ ռազմական ղեկավարի պաշտոնը: Մենք քո պայծառափայլությանը, որն իր նախկին գործունեությամբ աչքի է ընկել, նշանակում ենք այդ պատասխանատու պաշտոնին: Հայտնի պրովինցիաներից Մեծ Հայքը, որը և Ներքնագույն է կոչվում, և ազգությունները (այն է Անզետենան, Ինգիլենան, Ասթիանենան, Սոփենան, Սոփանենան՝ Մարտիրոպոլիս քաղաքով և Բալաբիտենան), նաև Առաջին և Երկրորդ Հայքերը հանձնում ենք քո հոգատարությանը՝ նրանց դուքսերի հետ միասին, որով միանգամայն վերանում է կոմեսի պաշտոնը: Քո տրամադրության տակ ենք դնում որոշ լեգեոններ՝ ոչ միայն նրանք, որոնք մենք նոր ենք հավաքագրում, այլև առանձնացնելով մայրաքաղաքի զորքերի կազմից, ինչպես և Արևելյան ու այլ զորքերից: Դրանով սակայն այս վերջին զորաբանակների լեգեոնների թիվը չի կրճատվում, քանի որ մենք նախապես նրանց կցել էինք բազում լեգեոններ. դրանով մենք պետությանը չենք ծանրաբեռնում, ոչ էլ ավելորդ ծախսեր անում: Մենք այժմ վերոհիշյալ զորաբանակներից վերցնում ենք որոշ լեգեոններ, բայց դրանից հետո նրանց կազմում մնում է ավելին, քան կար մինչև մեր երջանիկ թագավորությունը:*

*1. Հուստինիանոս I կայսեր (527-569) սույն հրովարտակի հայերեն թարգմանությունը, որ կատարել է Հր. Մ. Բարթիկյանը, լույս է տեսել «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի 5-րդ գրքում՝ «Բյուզանդական աղբյուրներ. Ա. Պրոկոպիոս Կեսարացի» (Երևան, 1967, էջ 299):*

*2. Խոսքը բյուզանդական նշանավոր զորավար, հայազգի Սիտտասի մասին է:*

*3. Ն. Ադոնցի կարծիքով, Հուստինիանոս I-ը սույն հրովարտակը հրապարակել է իր գահակալության հենց սկզբում:*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ I ԿԱՅՍԵՐ ԷԴԻԿՏԸ[1] ՀԱՅՈՑ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ[2]

### ՀԱՅՈՑ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ [ԻՐԱՎՈՒՆՔԻ] ՄԱՍԻՆ

*Մենք ցանկանում ենք հայերի վրա ևս ամբողջությամբ տարածել մեր օրենքները, տալ նրանց պատշաճ հավասարություն, ազատել նրանց նախկին անարդարությունից:*

### Գլուխ Ա

*Մենք վերջերս իմացանք նրանց [հայերի] մոտ գոյություն ունեցող բարբարոսական և կոպիտ մի օրենքի մասին, որ վայել չէ ո՛չ հռոմայեցիներին, ո՛չ էլ մեր պետության արդարության ոգուն, այն, որ ծնողներին ժառանգելու [իրավունք] ունեն միայն տղամարդիկ, բայց ոչ երբեք կանայք: Այդ իսկ պատճառով սույն սրբազան օրենքով հրամայում ենք քո պայծառափայլության[3], որ ժառանգելու իրավունքը նույնը լինի, ինչպես թելադրում են հռոմայեցիների օրենքները, որ Հայաստանում ժառանգելու իրավունքը տարածվի և՛ տղամարդկանց, և՛ կանանց վրա: Մենք այդ նպատակով ենք մեր օրենքներն այնտեղ ուղարկել, որպեսզի նման հարցերի կապակցությամբ դիմեն դրանց:*

*1. Եվ քանի որ մենք բոլորովին անտեղի ենք համարում [վերանայել] այն, ինչ արդեն կատարվել է անցյալում, այդ պատճառով հրամայում ենք, որ սույն օրենքը ուժի մեջ մտնի մեր բարեպաշտ թագավորության սկզբից հաշված[4], և այդ օրից մինչև այժմ վախճանված մարդկանց թողած ժառանգության հարցերը լուծել այս [նոր] օրենքի համաձայն, բացառյալ այն դեպքերը, երբ հարցն արդեն լուծված է, և այս կամ այն կերպ որոշված: Այդպիսի դեպքերում հրամայում ենք հարցը չվերանայել և թողնել ուժի մեջ:*

*2. Մենք ցանկանում ենք, որ նշված ժամանակվանից կանայք ևս*

*իրավունք ունենան, այսպես կոչված, տոհմային կալվածքներից ժառանգություն ստանալու: Իսկ եթե գտնվեն այնպիսիք, ովքեր հակառակ իրենց սովորութային ժառանգական իրավունքի, իրենց դուստրերին արդեն գրանցել են որպես ժառանգորդ, այդ դեպքում այդ կանայք և նրանցից ծնված երեխաները մասնակից թող դառնան տոհմային կայքի ժառանգմանը:*

*[Վ ե ր ջ ա բ ա ն ]*

*Քո գերազանցությունը թող պահպանի և ի կատար ածի սույն սրբազան օրենքով արտահայտված մեր կամքը, որպեսզի մեր օրենքները տարածվեն և ուժ ունենան բոլորի վրա: Սույն օրենքը, ինչպես ասացինք, գործողության մեջ է մտնում մեր թագավորության սկզբից, որից սկսած պետք է խստիվ ղեկավարվել դրանով, և բոլորը [պարտավոր են] այն պահպանել:*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ I ԿԱՅՍԵՐ 21-ՐԴ ՆՈՎԵԼԼԱՆ՝ ՀԱՅՈՑ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ[5]

**Հայերի մասին, որպեսզի նրանք ևս ամեն ինչում հետևեն հռոմայեցիների օրենքներին: Նույն կայսրը Ակակիոսին, Հայաստանի գերապայծառ անթյուպատոսին**

*[Ն ե ր ա ծ ո ւ թ յ ո ւ ն ]*

*Ցանկանալով, որ Հայոց աշխարհում գործեն լավ օրենքներ և այնպես անել, որ այն ոչնչով չտարբերվի մեր պետությունից, մենք զարդարեցինք այն հռոմեական վարչաձևով, վերացրինք դրա նախկին անվանումները: Մենք սովորեցրինք նրանց օգտվել հռոմեական կարգ ու կանոնից և կարգադրեցինք, որ նրանք [կառավարվեն] միայն այն օրենքներով, որոնք ընդունված են հռոմայեցիների մոտ: Մենք որոշեցինք սույն օրենքով վերացնել նրանց այդ սխալը, որպեսզի, հակառակ իրենց բարբարոսական սովորույթին, ծնողներին, եղբայրներին և մնացած ազգականներին ժառանգելու իրավունք ունենան ո՛չ միայն տղամարդիկ, այլև կանայք, որ կանայք առանց պռույգի[6] չամուսնանան, և որպեսզի նրանք այսուհետև չգնվեն իրենց ապագա ամուսինների կողմից, մի առավել բարբարոսական սովորույթ, որ մինչև օրս նրանց մոտ օրենքի ուժ ունի: Լոկ նրանք չեն, որ նման վայրենի սովորություն ունեն, այլև ուրիշ ժողովուրդներ ևս: Դա մարդ-*

*կային բնության անպատվությունն է, կանանց սեռի ստորացումը: Կնոջը դիտում են որպես ցածր և անպատիվ մի էակի, ամեն մի պատվից զրկված լինելու արժանի, կարծես նա Աստուծուց չի ստեղծվել և չի մասնակցում սերնդի հարատևմանը:*

### Գլուխ Ա

*Արդ, սույն սրբազան օրենքով սահմանում ենք, որ հայերի մոտ ևս ուժ ունենան կանանց՝ ժառանգելու մասին մեր իրավունքը, մեր օրենքները, ոչ մի տարբերություն գոյություն չունենա տղամարդկանց և կանանց միջև: Ինչպես որ սահմանված է մեր օրենքներով՝ ծնողներին ժառանգելու իրավունքի մասին, այն է հոր, մոր, պապին, տատին և այսպես վերընթաց գծով, կամ էլ վայրընթաց գծով՝ որդուն, դստեր ժառանգելու մասին,ահա այդ նույն կարգով կատարվի նաև հայերի մոտ և Հայաստանում գործող օրենքները ոչնչով չտարբերվեն հռոմայեցիների [օրենքներից]: Քանի որ նրանք մեր պետության հպատակներն են և մյուս ժողովուրդների հետ միասին մեզ են ծառայում և վայելում մեր [բարիքները], ապա չի կարելի, որ միայն նրանց մոտ կանայք չօգտվեն այն հավասարությունից, որ գոյություն ունի մեզ մոտ: Բոլորի վրա հավասարապես թող տարածվեն մեր օրենքները, և այն [օրենքները], որոնք մենք վերցրել ենք հներից և զետեղել մեր ինստիտուցիաների և դիգեստաների մեջ, ինչպես նաև նախկին ինքնակալների և մեր կողմից հրապարակված օրենքները:*

### Գլուխ Բ

*Մենք սահմանում ենք, որ այս բոլորը ուժի մեջ լինեն ընթացիկ տասնչորսերորդ ինդիկտիոնի սկզբից[7], սույն օրենքի հրապարակումից: Մենք գտնում ենք, որ անցյալի վրա այն տարածելը ոչ թե կկարգավորեր հարցը, այլ ընդհակառակն առաջ կբերեր խառնաշփոթություն: Այն թող ուժի մեջ մտնի, ինչպես ասացինք, ընթացիկ ինդիկտիոնի սկզբից. այսուհետև ժառանգելու մեջ հավասարություն կա, ժառանգելու իրավունքը հավասարապես տարածվում է և՛ կանանց, և՛ տղամարդկանց վրա: Անցյալում կատարվածը և՛ տոհմական կալվածների, և՛ որևէ այլ կայքի [ժառանգության] վերաբերյալ՝ թույլ ենք տալիս մնա անփոփոխ, և կանայք ոչ մի դեպքում չպետք է մաս ունենան այդ տոհմական կալվածներից և ընդհանրապես ժառանգությունից, որն արդեն տրվել է մինչև 13-րդ ինդիկտիոնը ներառյալ: Մեր սույն օրենքն ուժի մեջ է մտնում միայն նշված ժամանակվանից, այն է 14-րդ ինդիկտիոնից:*

*Վ ե ր ջ ա բ ա ն*

*Քո պայծառափայլությունը և քեզանից հետո պաշտոնդ ստացողները մեր սույն սրբազան օրենքը թող հավիտյան պահպանեն:*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ I ԿԱՅՍԵՐ 31-ՐԴ ՆՈՎԵԼԼԱՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱՐԵՆՈՐՈԳՈՒՄՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ[8]

### *Հայաստանի չորս արխոնտների նշանակման մասին*

*Նույն կայսրը Արևելքի սրբազան պրետորիոնի երկիցս պրեֆեկտին, ամենափառավորյալ Հովհաննեսին՝ ապոհյուպատոսին և պատրիկին:*

### *[Ն ե ր ա ծ ո ւ թ յ ո ւ ն]*

*Այն, ինչ թափթփված է և դես ու դեն ցրված, եթե պետք եղած կարգի բերվի և դասավորվի՝ բոլորովին այլ տեսք կստանա: Տգեղը գեղեցիկ կդառնա, վատը՝ լավ, այն, ինչ նախկինում ցրված էր և խառնիճաղանջ, ձև կստանա և որոշակիություն ձեռք կբերի: Մենք ահա այդպիսի վատ դրության մեջ գտանք Հայոց երկիրը և որոշեցինք ընդհանուր ձևի բերել այն, որպեսզի բարեկարգ վիճակը նրան անհրաժեշտ հզորություն տա և պետք եղած կարգ ու կանոնը հաստատվի:*

### *Գլուխ Ա*

*Այդ իսկ նպատակով մենք կազմակերպեցինք չորս Հայք, մեկը՝ Ներքնագույնը, որի մայրաքաղաքը կրում է մեր բարեպաշտ անունը, անցյալում Բազանիս կամ Լեոնտոպոլիս: Դրան մենք շնորհեցինք անթյուպատոսություն և կառավարիչ նշանակեցինք պայծառափայլ Ակակիոսին, որի պաշտոնը համարում ենք սպեկտաբիլային[9] և շնորհում նրան բոլոր այն, ինչ հասնում է անթյուպատոսության: Մենք նրան շնորհեցինք անթյուպատոսի նշանակներ և օժտեցինք բոլոր այն իրավունքներով, որոնք հասնում են այդ պաշտոնին: Ներքնագույն [Հայքին] մենք տալիս ենք հետևյալ քաղաքները. Թեոդոսուպոլիսը, որը նախկինում ևս նրա կազմի մեջ էր մտնում, Սատալան, Նիկոպոլիսը, Կոլոնիան՝ վերցնելով այն, այսպես կոչված, Առաջին Հայքից, Տրապիզոնն ու Կերասունը՝ նախկին Պողեմոնյան Պոնտոսից: Այսպի-*

*սով, որոշ [քաղաքներ] վերցնելով պրովինցիայի պայծառափայլ արխոնտից, ինչպես և երևելի մոդերատորից, կազմում ենք մեկ ամբողջական պրովինցիա՝ յոթ քաղաքով և դրանց շրջաններով:*

*1. Մենք կազմակերպեցինք Երկրորդ Հայքը, որ նախապես Առաջին [Հայք] էր կոչվում՝ Սեբաստիա կենտրոնով: Մենք դրան տվեցինք Սեբաստուպոլիս քաղաքը, որն անցյալում էլ դրա կազմում էր, դրա վրա ավելացրած նաև Կոմանան՝ վերցնելով այն անցյալում Պոլեմոնյան Պոնտոս կոչվածից, Զելան՝ Հելենոպոնտոսից, նաև Բրիսան, այնպես որ այս պրովինցիայի կազմում կա հինգ քաղաք, իսկ կառավարման հեգեմոնային ձևը թողնում ենք, ինչպես որ նախկինում էլ էր, իսկ կառավարչին չտվեցինք ավելի բարձր աստիճան, այլ թողեցինք նույնը, ինչ նախկինում ուներ:*

*2. Այնուհետև կազմեցինք Երրորդ Հայքը, որ նախկինում Երկրորդ [Հայք] էր կոչվում: Կենտրոնը հին, երևելի Մելիտենե քաղաքն է, որ գտնվում է շատ հարմար վայրում, ունի առողջ կլիմա և գտնվում է Եփրատի հոսանքից ոչ հեռու: Մենք ներկա հրամանագրով հարմար գտանք այն բարձրացնել սպեկտաբիլային աստիճանի, նրա արխոնտին հորջորջել հուստինիանոսյան կոմես, և որպես ռոճիկ սահմանում ենք յոթ հարյուր սոլիդ, նրա օգնականին՝ յոթանասուն երկու սոլիդ, իսկ նրա դիվանատան՝ վաթսուն սոլիդ և այն ամենը, ինչ սահմանված է նման աստիճանների համար: Տաքսեոտ կոչվածները [պարտավոր են] զբաղվել ինչով որ իրենք անցյալում զբաղվում էին, մասնավորապես պետական հարկերի գանձման գործով: Նրանց անունն է միայն փոխվում և այժմ կոչվում են կոմիտիանոսներ, իսկ մնացած ամեն ինչը մնում է անփոփոխ, ինչպես նախկինում տաքսեոտների ժամանակ: Նրան տալիս ենք հետևյալ քաղաքները. Արքա, Արաբիսոս, Արիարաթիա, մյուս Կոմանա (սա կոչվում է նաև Ոսկե [Կոմանա]), Կուկուսոս, որոնք և անցյալում էլ ուներ, և այսպիսով դրա կազմում կա վեց քաղաք:*

*3. Մենք կազմեցինք նաև Չորրորդ Հայքը, որ նախկինում պրովինցիայի կառուցվածք չուներ: Նա բնակեցված լինելով ազգություններով, կրում էր տարբեր բարբարոսական անուններ՝ Ցոփանենե, Անզիտենե, Ցոփանե, Ասթիանենե, Բալաբիտենե և գտնվում էր սատրապների իշխանության ներքո: Այս իշխանության նման հորջորջումը ո՛չ հռոմեական է, ո՛չ էլ մեր նախնիներից է գալիս, այլ ներմուծված է օտար պետությունից: Մենք այնտեղ ևս քաղաքացիական կառավարում հաստատեցինք, քաղաքացիական արխոնտ նշանակելով, և դրան տվեցինք Մարտիրոպոլիս քաղաքը ու Կիթարիզոն ամրոցը: Եվ*

*քանի որ մենք նրան կոնսուլային դարձրինք, հետևաբար նա դասվեց օրդինար[10] պրովինցիաների շարքը, այնպես որ չորս Հայքերից երկուսը սպեկտաբիլային են, որոնցից մեկը կառավարվում է անթյուպատոսի կողմից, մյուսը՝ կոմեսի, Առաջին Հայքի կառավարիչն անթյուպատոս է, իսկ Երկրորդ Հայքինը՝ կոմես: Ինչ վերաբերում է Երկրորդ և Չորրորդ [Հայքի] կառավարիչներին, ապա նրանք օրդինար են: Մենք կարգադրեցինք, որ մինչև հինգ հարյուր դահեկան գումարի բողոքարկման հարցերով չդիմեն երջանիկ քաղաքին, այլ մերձակա սպեկտաբիլային արխոնտներին: Այդ իսկ պատճառով մենք սահմանում ենք, որ Սեբաստիա, Առաջին Հայքի արխոնտին, այն է՝ անթյուպատոսին ուղղվեն բողոքարկումները Երկրորդ Հայքից, իսկ մինչև վերոհիշյալ գումարի չափով բողոքարկումները Չորրորդ Հայքից՝ Մելիտինե, Երրորդ Հայքի կոմեսին:*

## Գլուխ Բ

*Այս բոլորից հետո մենք նպատակահարմար գտանք, որ Երրորդ Հայքի կառավարիչ նշանակենք մի հայտնի մարդու, որն արդեն երկար ժամանակ ծառայել է մեզ և արժանի է այդ մեծ և կարևոր պաշտոնին: Այդպիսին մենք համարում ենք պայծառափայլ Թովմային, որը երկար ժամանակ պաշտոնավարել է Հայաստանում, բացի դրանից նա օգտակար և ազնվորեն ծառայել ու ծառայում է մեզ: Ահա նրան ենք մենք առաջ քաշում այդ պաշտոնին, որպեսզի նա կառավարի այս պրովինցիան մեր կողմից սահմանված կարգի համաձայն, հոգ տանի կատարելու մեր այլևայլ կարգադրությունները, որոնք ուղղակի կամ անուղղակի՝ սրբազան կոմմոնիտորիաների կողմից են տրվում նրան, և՛ իրեն վստահված պրովինցիայի, և՛ մյուս [պրովինցիաների] վերաբերյալ: Այդ առթիվ մենք պատրաստել ենք նրա համար բազում և զանազան հարցերի վերաբերյալ սրբազան կոմմոնիտորիաներ, որոնք նա պետք է ի կատար ածի շրջաններում ևս:*

*1. Ինչպես բազմիցս ասել ենք, հոգևորականության վերաբերյալ պետք է պահպանել նախկին իրավիճակը, ոչ մի բան չի փոխվում ո՛չ մետրոպոլիտների իրավունքների հարցերում, ո՛չ էլ նրանց ձեռնադրության գործում: Ովքեր որ անցյալում իրավունք են ունեցել ձեռնադրելու, այժմ էլ թող ձեռնադրեն, և նախկին մետրոպոլիտները թող մնան իրենց վիճակում: Այդ հարցում որևէ նորամուծություն չի կատարվում:*

## Գլուխ Գ

*Միանգամայն հասկանալի է, որ քանի որ Երրորդ Հայքի կոմեսին մենք ոչ միայն քաղաքացիական, այլև ռազմական իշխանությամբ օժտեցինք, ապա նրան են ենթարկվում նաև այդ [պրովինցիաներում] գտնվող զինված ուժերը: Նա, որպես ռազմական ղեկավար, իրավունք ունի իր կողմից կարգադրություններ անելու նրանց, հոգ տանել և ապահովել նրանց մատակարարումը, քննել նրանց թույլ տված ապօրինությունները, թույլ չտալ, որ զինվորները բռնանան հպատակների վրա: Եթե ավելի ծանր հանցանք կատարվի, ապա նա [պետք է] լսի այդ քրեական գործը՝ եթե օրինազանցները զինվորականներ են: Նա օժտված է այն բոլոր լիազորություններով, ինչ որ ռազմական ղեկավարները: Ինչպես որ մենք ռազմական լիազորություններ տվեցինք Իսավրիայի, Պակատյան Փռյուգիայի կոմեսներին, նույնպես և Լիկաոնիայի, Պիսիդիայի և Թրակիայի պրետորներին, այնպես և նա ոչ միայն քաղաքացիական գործերում իշխանություն ունի, այլև ռազմական: Նա իրավասու է և՛ զինվորական, և՛ քաղաքացիական անձնավորություններին կարգադրություններ անելու, որպես միասնական իշխանության կրող: Նրա հիմնական հոգսը պիտի լինի այն, որ պրովինցիաներում ոչ մի հանցագործություն տեղի չունենա, անհրաժեշտ պատիժը սահմանի [զանցանքների համար]: Նրա այդ իրավասությունը տարածվում է պրովինցիայի բոլոր անձնավորությունների վրա [հավասարապես], մասնավոր անձնավորություն է նա, զինվորական, թե պետական պաշտոնյա: Մենք ուզում ենք, որ մեր հպատակների մեջ մշտապես տիրի անդորրությունը, որպեսզի աչառությունն օրենքի հանդեպ արհամարհանք չառաջացնի:*

## Վերջաբան

*Այդպիսով քո գերազանցությունը թող ջանա այժմ և միշտ պահպանել այն, ինչ ներկայացրել ենք մենք՝ չորս Հայքերի կազմակերպման մասին կարգադրությամբ, մասնավորապես Երրորդ [Հայքի] մասին, որը և պատճառ դարձավ սույն սրբազան օրենքի հրապարակման, և ամեն ինչ անի, իր կողմից նույնիսկ հատուկ կարգադրություններ հրապարակելով, մեր սահմանած ամենամյա հարկերը հավաքելու համար:*

*1. Հուստինիանոս կայսեր սույն և մյուս հրովարտակների հայերեն թարգմանությունը, որ կատարել է Հր. Բարթիկյանը, լույս է տեսել «Օտար աղբյուրներ*

*Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի 5-րդ գրքում՝ «Բյուզանդական աղբյուրներ. Ա. Պրոկոպիոս Կեսարացի» (Երևան, 1967, հավելված, էջ 300-306):*

*2. Հրովարտակը հրապարակվել է 535 թ. հուլիսի 23-ին:*

*3. Ն. Ադոնցը ենթադրում է, թե սույն հրովարտակը հասցեագրված է Արևելքի պրետորյան պրեֆեկտ Հովհաննեսին (տե՛ս* **Н. Адонц,** *Армения в эпоху Юстиниана, էջ 184):*

*4. Այսինքն՝ 527 թվականից սկսյալ:*

*5. Հրովարտակը հրապարակվել է 536 թ. մարտի 18-ին:*

*6. Խոսքը օժիտի մասին է:*

*7. Այսինքն՝ 536 թ. սեպտեմբերից:*

*8. Հրովարտակը հրապարակվել է նույն՝ 536 թ. մարտի 18-ին:*

*9. Սպեկտաբիլան դատարանային աստիճան է, որը նշանակում է, թե պրովինցիաների կառավարիչները միաժամանակ նաև դատավորներ էին:*

*10. Օրդինարը ևս դատարանային աստիճան է, ավելի ստորադաս, քան Սպեկտաբիլան:*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ I ԿԱՅՍԵՐ ՎԱՐՉԱՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ՊՐՈԿՈՊԻՈՍ ԿԵՍԱՐԱՑՈՒ

### ԿԱՌՈՒՅՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### *Գիրք երրորդ*

***Գլ. 1.*** *Նախորդ գրքում ես խոսեցի այն մասին, թե ինչպես Հուստինիանոս կայսրը ամրություններով ապահովեց Արևելքը[1]: Ձեռնարկելով պատմել հռոմեական պետության պարսկական սահմանների վրա նրա կառուցած ամրությունների մասին, ես նպատակահարմար գտա սկսել հայերից, որոնք բնակվում են Ամիդից մինչև մյուս Թեոդոսուպոլիսը՝ պարսիկների դիմաց ընկած շրջաններում: Նախքան [Հայաստանում] կատարված կառուցումների մասին խոսելը, ես կարևոր եմ համարում հիշատակել, թե ինչպես կայսրը նախկինում չափազանց անապահով վիճակում ապրող հայերին արժանացրեց այժմյան կայուն անվտանգության: Նա այդտեղի բնակչությանը փրկեց ոչ այնքան շինարարությամբ, որքան այլ խնդիրներում իր ցույց տված հոգատարությամբ, որի մասին ես այստեղ մանրամասն կպատմեմ: Սկսենք մի քիչ հեռվից:*

*Հայերը հնում ունեցել են թագավոր իրենց ցեղից: Այդ մասին հիշատակություններ կան հին պատմությունը շարադրող հեղինակների մոտ: Երբ Ալեքսանդր Մակեդոնացին գահընկեց արեց պարսից արքային, պարսիկները խոնարհաբար տանում էին ստրկական լուծը,*

*բայց պարթևները մակեդոնացիների դեմ ապստամբություն բարձրացնելով և հաղթանակ տանելով, դուրս շպրտեցին նրանց և գրավեցին մինչև Տիգրիս գետն ընկած տարածությունը: Դրանից հետո հինգ հարյուր տարվա ընթացքում պարսից պետությունը գտնվում էր նրանց ձեռքում, մինչև այն ժամանակ, երբ հռոմայեցիների կայսր դարձավ Մամայայի որդի Ալեքսանդրը*[2]*: Այն ժամանակ էր, որ պարթևական արքաներից մեկը, իր Արշակ անունով եղբորը հաստատեց Հայոց թագավոր, ինչպես այդ մասին հիշատակում է Հայոց պատմությունը: Ոչ ոք ահա չկարծե, որ Արշակունիները հայկական ծագում ունեն: Եվ այսպես [հայերի] և [պարթևների] միջև հինգ հարյուր տարվա ընթացքում խաղաղություն էր տիրում, որը պայմանավորված էր [իշխող հարստությունների] ազգակցական կապերի առկայությամբ: Հայոց թագավորը նստում էր Մեծ Հայք կոչված [երկրում], լինելով դեռ վաղուց հռոմեական կայսեր հպատակ: Որոշ ժամանակ անց Հայոց մի ինչ որ [ուրիշ] Արշակ թագավոր*[3] *ունենում է երկու որդի, որոնց անուններն էին Տիգրան և Արշակ: Իր կյանքի վերջում նա կտակ թողեց, որի համաձայն երկու որդիներն էլ դառնում էին իշխանության ժառանգորդներ: Բայց նա պետությունը հավասար կերպով չբաժանեց նրանց միջև: Նա Տիգրանին թողեց քառապատիկ ավելի բաժին: Ահա հայր Արշակը, այս կերպ կարգադրելով թագավորության գործերը, վախճանվեց, իսկ որդի Արշակը, որին փոքր բաժին էր հասել, շատ զայրացած և դժգոհ, հարց բարձրացրեց հռոմայեցիների կայսեր առջև, հույս ունենալով բոլոր միջոցներով վերացնել եղբոր թագավորությունը և հոր անարդարացի որոշումը չեղյալ հայտարարել: Այն ժամանակ հռոմայեցիների վրա իշխում էր Արկադիոսի*[4] *դեռ շատ մանկահասակ որդի Թեոդոսը*[5]*: Տիգրանը, վախենալով կայսեր հաշվեհարդարից, իր թագավորության հետ միասին հանձնվեց պարսիկներին, գերադասելով ապրել Պարսկաստանում որպես մասնավոր անձնավորություն, քան թե եղբոր հետ արդարացի լուծել հարցը և միասին, արդար ու օրինավոր թագավորել Հայոց վրա: Արշակն իր հերթին ոչ պակաս երկյուղ զգալով պարսիկների և իր եղբոր ոտնձգություններից, որոշ պայմաններով, որոնց մասին ես խոսել եմ պատերազմների մասին գրքում*[6]*, իր թագավորությունը զիջեց Թեոդոս կայսեր: Եվ ահա որոշ ժամանակ Հայոց երկիրը դարձավ հռոմայեցիների և պարսիկների կռվախնձոր և վերջ ի վերջո նրանք եկան համաձայնության, որ պարսիկները տիրեն Տիգրանի բաժնին, հռոմայեցիները՝ Արշակի: Երկու կողմերն էլ այդ հաստատեցին պայմանագրով, որից հետո հռոմայեցիների կայսրը Հայոց իշխան էր նշա-*

*նակում, երբ որ ցանկանար և ում որ ցանկանար: Այդ իշխանին անվանում էին, ինչպես և այժմ, Հայաստանի կոմես:*

*Բայց որովհետև այդպիսի ղեկավարությունը, զուրկ լինելով ռազմական ուժից, ի վիճակի չէր դիմադրելու թշնամիների հարձակումներին, և Հուստինիանոս կայսրն էլ համոզվեց, որ դրա պատճառով Հայաստանը մշտապես տակնուվրա է լինում ու, բացի դրանից, բարբարոսների համար այն դյուրամատչելի է, ապա վերացրեց այդ իշխանությունը և հայերի վրա նշանակեց զորավար, թշնամուն դիմադրելու համար տալով նրան բավարար քանակությամբ զորք: Ահա նա այդպես տնօրինեց Մեծ Հայք կոչված [երկրի] գործերը[7]: Ինչ վերաբերում է մյուս Հայքին, որը գտնվում է Եփրատ գետից այս կողմ և տարածվում է մինչև Ամիդ քաղաքը, այնտեղ իշխում էին հինգ հայ սատրապներ[8], որոնց իշխանությունը ժառանգական էր և ցմահ: Նրանք հռոմայեցիների կայսրից ստանում էին միմիայն նշանակներ: Այդ նշանակների մասին արժե խոսել, քանի որ դրանք ոչ ոք չի տեսնելու այլևս: Դա բրդյա քղամիդ էր, սակայն ոչ թե ոչխարի բրդից, այլ ծովից հավաքված: Այդ բուրդը բուսնում է պիննոս կոչված ծովային կենդանիների վրա: Ծիրանիի այն մասը, որի վրա սովորաբար գցվում էր բեհեզը, ոսկուց էր: Քղամիդի վրա ամրացված էր լինում ոսկե ճարմանդ՝ մեջտեղում թանկագին քար: Այդ ճարմանդից ոսկե լայն շղթայով կախված էր երեք հակինթ: [Քղամիդից բացի] կար նաև մետաքսյա պատմուճան, ամենուրեք պաճուճված ոսկե զարդերով, որոնց պլումիա են անվանում, և մինչև ծունկը հասնող կարմիր կոշիկներ, որոնք սովորաբար հագնում են հռոմայեցիների և պարսից թագավորները:*

*Հռոմեական զորքը երբևիցե օգնություն չէր ցուցաբերել ո՛չ Հայոց թագավորին, ո՛չ էլ սատրապներին: Պատերազմական գործերում նրանք ինքնուրույն էին: Որոշ ժամանակ անց, Զենոնի[9] թագավորության միջոցին, երբ Իլլոսն ու Լեոնտիոսն ապստամբություն բարձրացրին կայսեր դեմ[10], սատրապներից մի քանիսը որոշեցին բացահայտ կերպով նրանց միանալ: Այդ էր պատճառը, որ երբ Զենոն կայսրը ճնշեց Լեոնտիոսի և Իլլոսի [ապստամբությունը][11], մի շատ թույլ և աննշան իշխանություն ունեցող սատրապի՝ Բալաբիտենե[12] կոչված երկրում թողեց նախկինի պես իշխել միայն, իսկ մնացած բոլորին, զրկելով իշխանությունից, չտվեց այն նրանց ցեղակիցներին, այլ, ինչպես հռոմեական բոլոր մյուս իշխանություններում էր, դարձրեց ոչ ժառանգական՝ ըստ կայսեր ցանկության: Բայց նրանց իշխանության տակ եղած զորքը բաղկացած էր ոչ թե հռոմայեցիներից, այլ*

*փոքրաքանակ հայերից, ինչպես ընդունված էր հնում, որի պատճառով էլ նրանք ի վիճակի չէին դիմադրել թշնամիների հարձակումներին: Իմանալով այդ, Հուստինիանոս կայսրն անմիջապես վերջ տվեց սատրապների իշխանությանն և այնտեղի ցեղերի վրա նշանակեց երկու, այսպես կոչված, դուքսերի: Նա նրանց տվեց հռոմեական մեծաքանակ զորք, որպեսզի պահպանեն հռոմեական սահմանները, իսկ նրանց համար կառուցեց հետևյալ ամրությունները:*

***Գլ. 2.** Ես կսկսեմ Միջագետքի շրջաններից, որպեսզի իմ այս պատմությունը վերևում ասվածի շարունակությունը լինի: [Հուստինիանոսն] ահա հայկական ցեղերի վրա իշխող [երկու] իշխաններից՝ դուքս կոչվածներից մեկին հաստատեց Մարտիրոպոլիս կոչված քաղաքում, իսկ մյուսին՝ մի ամրոցում, որն անվանում են Կիթարիզոն[13]: Ես այժմ կբացատրեմ, թե հռոմեական պետության ո՛ր շրջանում են գտնվում այս վայրերը: Սոփանենե[14] կոչված Հայքում գտնվում է Մարտիրոպոլիս անունով քաղաքը՝ Նիմֆիոս գետի[15] ափին, թշնամիներին ամենից մոտ վայրում, որովհետև այստեղ հռոմայեցիների և պարսիկների սահմանը Նիմֆիոս գետն է: Գետի մյուս ափին է գտնվում Արզանենե երկիրը[16], որ դեռ վաղուց հպատակ էր պարսիկներին: Այն պատճառով, որ [Մարտիրոպոլիսը] հռոմայեցիների կողմից անուշադրության էր մատնված, նա չարունակ ենթակա էր բարբարոսների վտանգին: Օրինակ, երբ Անաստասիոսի թագավորության օրոք պարսից արքա Կավադը ներխուժեց Հռոմայեցիների երկիրը, նա զորքը տարավ Մարտիրոպոլսի վրայով, որովհետև լավ քայլող մարդու համար դա գտնվում էր Ամիդից մեկ օրվա ճանապարհից մի քիչ ավելի հեռավորության վրա: Նա քաղաքը գրավեց չափազանց հեշտությամբ, ի միջի այլոց, առանց պաշարելու, հարձակվելու կամ գրոհելու, այլ պարզապես ասելով, որ գալիս է, որովհետև այդտեղի բնակիչները, լավ գիտենալով, որ իրենք մի վայրկյան անգամ ի վիճակի չեն դիմանալ պաշարման (նրանք տեսել էին, որ մարերի[17] զորքն արդեն մոտեցել է), Սոփանենեի սատրապի սատրապական հանդերձանքը կրողի՝ Թեոդորոսի հետ միասին անմիջապես գնացին Կավադի մոտ, հանձնելով նրան և՛ իրենց, և՛ Մարտիրոպոլիսը, ինչպես նաև երկու տարվա պետական հարկերը: Կավադը այդ բանից գոհ, ձեռք չտվեց ո՛չ քաղաքին, ո՛չ էլ [շրջակա] երկրին՝ որպես պարսից իշխանության պատկանող, բնակիչներին էլ ոչ մի վնաս չհասցրեց, ոչ մի ավարառություն չարեց, քաղաքում ոչ մի փոփոխություն չմտցրեց, այլ նույն Թեոդորոսին նշանակեց սատրապ և որ-*

*պես երախտագիտության ապացույց նրան տվեց իշխանության նշանակներ, որպեսզի պահպանի պարսից երկիրը: Այնուհետև նա զորքն առաջ տանելով, պաշարեց ու գրավեց Ամիդը և վերադարձավ Պարսից երկիրը: Այդ մասին ես պատերազմների մասին գրքում ասել եմ: Անաստասիոս կայսրը, լավ գիտենալով, որ անհնարին էր փրկել ոչ մի ամրություն չունեցող Մարտիրոպոլիսը թշնամիների հարձակումից, բոլորովին չզայրացավ Թեոդորոսի և սոփանենեցիների վրա, այլ շատ շնորհակալություն հայտնեց նրանց այդ նախաձեռնության համար: Մարտիրոպոլսի պարսպի հաստությունը մոտ չորս ոտնաչափ էր, իսկ բարձրությունը՝ մինչև քսան, այնպես որ թշնամիները կարող էին այն գրավել ոչ միայն գրոհով, կամ մեքենաների օգնությամբ, այլ պարզապես շատ հեշտությամբ նրա վրայից ներս ցատկելով:*



**Հուստինիանոս I կայսր**

***Գլ. 3.*** *Մարտիրոպոլսից արևմուտք գտնվում է Ֆեյսոն անունով վայրը, նույնպես Սոփանենե կոչվող Հայքում, Մարտիրոպոլսից մեկ օրվա ճանապարհից մի քիչ պակաս հեռավորության վրա: Այս վայրից այն կողմ, մոտ ութ մղոն հեռավորության վրա բարձրաբերձ և բոլորովին անանցանելի լեռներն իրար միանալով կազմում են երկու՝ իրար շատ մոտ գտնվող լեռնանցքներ, որոնց սովորաբար կոչում են կլեյսուրներ: Պերսարմենիայից[18] Սոփանենե գնացողների համար, որտեղից էլ նրանք գնան՝ պարսկական սահմաններից, թե Կիթարիզոն ամրոցի վրայով, պետք է անցնեն միայն այդ երկու լեռնանցքներից: Տեղացիք [լեռնանցքներից] մեկն անվանում են Իլլիրիսոս, իսկ մյուսը՝ Սաֆխաս: Թշնամիներին այս ճանապարհից զրկելու համար, այս վայրերը կարոտ էին առավել ապահովության և հոգատարության. ընդհակառակը, անցյալում մարդիկ անպաշտպան էին թողել դրանք: Հուստինիանոս կայսրը և՛ Ֆեյսոնում, և՛ լեռնանցքներում նշանավոր և անառիկ ամրություններ կառուցեց, կայազոր հաստատեց և*

*այդպիսով երկիրը բարբարոսների համար միանգամայն անմատչելի դարձրեց: Ահա այն, ինչ կատարեց Հուստինիանոս կայսրը Սոփանենե երկրում:*

*[Հուստինիանոսն այնուհետև] Կիթարիզոն վայրում, որը գտնվում է Ասթիանենե*[19] *կոչված [երկրում], բարձրադիր տեղում, հսկայական, միանգամայն անառիկ և բոլորովին նոր ամրոց կառուցեց: Նա մշտահոս ջուր բերեց, բնակիչներին ամեն ինչով ապահովեց և, ինչպես արդեն ասել եմ, մյուս դուքսին բավական մեծ կայազորով հաստատեց այստեղ: Այդ ձևով ահա նա ապահովեց հայկական ցեղերի անվտանգությունը:*

*Կիթարիզոնի, Թեոդոսուպոլսի և Երկրորդ Հայքի մեջտեղում գտնվում է Խորզանե երկիրը*[20]*, որի տարածությունը մոտ երեք օրվա ճանապարհ է: Նա պարսիկների հետ ոչ մի սահմանագիծ չունի՝ լիճ, գետի հոսանք կամ լեռնանցք: Նրանց սահմաններն այստեղ խառնիխուռն են, այնպես որ բնակիչները, որոնք կա՛մ հռոմայեցիներին, կա՛մ էլ պարսիկներին են հպատակ, մեկը մյուսից որևէ ոտնձգության մասին կասկածելու ոչ մի վախ չունեն: Ընդհակառակը, նրանք իրար միջև խնամիական կապեր են հաստատում, առևտուր անում և միասին երկրագործությամբ զբաղվում: Իսկ այն դեպքում, երբ թագավորի հրամանով որևէ կողմի զորահրամանատարները զորքով հարձակվեն մյուս կողմի վրա, հարևաններին միշտ գտնում են անպաշտպան, որովհետև իրար շատ մոտ գտնվող անչափ մարդաշատ բնակավայրերը դեռ հնուց ոչ մի ամրություն չունեին: Այդ էր պատճառը, որ պարսից արքայի համար հռոմեական սահմաններն այստեղից անցնելը շատ դյուրին ու հեշտ գործ էր, մինչև որ Հուստինիանոս կայսրն այս հարցը լուծեց հետևյալ կերպ: Այդ երկրի մեջտեղում գտնվում է Արտալեսոն անունով բնակավայրը, որն ամրագույն պարսպով շրջապատելով, դարձրեց ամենաանառիկ ամրոց, այնտեղ հաստատեց կայազոր, մշտական զորահրամանատարի գլխավորությամբ, որին հռոմայեցիները լատիներեն լեզվով անվանում են դուքս: Ահա այսպես [Հուստինիանոսը] պարսպապատեց ամբողջ այդ հեռաստանը:*

***Գլ. 4.*** *Կայսրն այսպիսի գործունեություն ծավալեց այնտեղ: Այժմ ես կպատմեմ այն մասին, թե ինչ արեց նա մյուս Հայաստանում: Սատալա քաղաքն*[21] *անցյալում քիչ հույսեր էր ներշնչում, որովհետև գտնվում էր թշնամու երկրին մոտիկ և հարթավայրում, դրան շրջապատող բազմաթիվ բլուրների ստորոտում: Այդ պատճառով նա*

*կարիք ուներ հզոր պարիսպների՝ ընդդեմ թշնամու հարձակումների: Հակառակ այդպիսի տեղանքին, պարիսպներն էլ խախուտ էին, որովհետև կառուցվել էին սխալ սկզբունքով, առանց անհրաժեշտ ջանքերի և բացի դրանից երկար ժամանակից ամենուրեք ճեղքեր էին տվել: Կայսրն ամբողջությամբ քանդեց [պարիսպը] և նորը կառուցեց, այնքան բարձր, որ կարծես գերազանցում է շրջակա բլուրների բարձրությանը և այնքան լայն, որ կարողանա անվնաս կրել այդպիսի մեծ բարձրությունը: Դրա շուրջը կառուցելով նաև ամուր նախապարիսպ, ապշեցրեց թշնամիներին: Նա Սատալայից ոչ շատ հեռու մի չափազանց հզոր ամրոց կառուցեց Օսրոենե կոչված վայրում*[22]*:*

*Այդ նույն երկրում ուղղաբերձ բլրի գագաթին գտնվում է հնում կառուցված մի ամրոց, որը հռոմայեցի զորավար Պոմպեոսը գրավելով և պատերազմով տիրանալով երկրին, շատ ամրացրեց և անվանեց Կոլոնիա: Սա ևս, որ այդքան երկար ժամանակ ավերակ էր, Հուստինիանոս կայսրը վերականգնեց ամբողջ հզորությամբ, տեղացի բնակչությանը տվեց անհամար դրամ՝ ագարակներում ամենուրեք նոր ամրություններ կառուցելու, կամ էլ խախտվածները վերանորոգելու նպատակով: Այդպիսով գրեթե բոլոր ամրությունները, որոնք այստեղ են գտնվում, Հուստինիանոս կայսեր գործն են: Նա այնտեղ կառուցեց նաև ամրոցներ՝ Բայբերդոն կոչվածը*[23]* և Արեոնը: Նա խախտված Լյուսիորմոնը վերականգնեց, ինչպես նաև Լյուտարարիզոնը, իսկ Գերմանոսի Ֆուսատոն*[24]* *կոչված վայրում կառուցեց նոր ամրոց: Հայաստանի Սեբաստիա և Նիկոպոլիս քաղաքների պարիսպները, որոնք երկար ժամանակից խախտված լինելով փլվելու վրա էին, նա վերականգնեց և նորոգեց: Այդ բոլորից բացի, նա այնտեղ կառուցեց եկեղեցիներ և վանքեր. Թեոդոսուպոլսում Ս. Աստվածածնի տաճար կառուցեց, իսկ Պետրիոս կոչված տեղում, ինչպես նաև Կուկարիզոնում*[25]* *վերանորոգեց վանքերը: Նիկոպոլսում նա կառուցեց քառասունհինգ սրբոց վանքը, իսկ Բիզանայում՝ Ս. Գևորգ վկայի սրբարանը: Թեոդոսուպոլսի մոտակայքում վերանորոգեց Քառասուն մարտիրոսաց վանքը:*

*Հնում Փոքր Հայք կոչված [երկրում], Եփրատ գետից ոչ շատ հեռու, գտնվում էր մի վայր, ուր հաստատվել էր հռոմեական զորագունդ: Վայրը կոչվում էր Մելիտենե, իսկ զորագունդը՝ լեգեոն: Հռոմայեցիները հնում այստեղ ցածրադիր վայրում կառուցել էին քառակուսի ամրություն, որը զինվորների համար բավականաչափ զորանոցներ ուներ: Նրանք այնտեղ էին պահում նաև իրենց դրոշները: Այնուհետև հռոմայեցիների կայսր Տրայանոսի որոշմամբ վայրը ստա-*

*ցավ քաղաքի իրավունք և դարձավ շրջանի մայրաքաղաքը: Ժամանակի ընթացքում Մելիտենեն քաղաքը մեծացավ և մարդաշատ դարձավ: Եվ երբ ամրությունից ներս այլևս տեղ չմնաց բնակվելու (ինչպես ես ասացի, տարածությունը շատ փոքր էր), հաստատվեցին [քաղաքի] շրջակայքում, ուր և եկեղեցիներ, վարչական շենքեր, հրապարակ, խանութներ կառուցեցին, սյունաշարքեր, բաղնիքներ, թատրոններ, [անցկացրին] քաղաքային փողոցներ և ինչ որ անհրաժեշտ է մի մեծ քաղաք զարդարելու համար: Բայց դրա հետևանքով Մելիտենեի մեծ մասը քաղաքի սահմաններից դուրս եկավ: Անաստասիոս կայսրը ձեռնարկեց ամբողջ քաղաքի պարսպապատումը, սակայն նա իր ծրագիրը չիրականացրած մահացավ: Հուստինիանոս կայսրն ամեն կողմից պարիսպներով շրջապատելով այն, Մելիտենեն դարձրեց Հայաստանի հզոր ամրություն և զարդ:*

***Գլ. 5.*** *Ահա այդ կատարեց [Հուստինիանոսը] Եփրատ գետի աջ ափին գտնվող Հայաստանում: Այժմ ես կպատմեմ, թե ինչ կատարեց նա Մեծ Հայքում[26]: Երբ հռոմայեցիների կայսր Թեոդոսը ստացավ Արշակի տերությունը, որի մասին ես քիչ առաջ պատմեցի, բլուրներից մեկի վրա ամրոց կառուցեց, որը սակայն մատչելի էր թշնամիներին, և այն Թեոդոսուպոլիս անվանեց: Պարսից արքա Կավադը, երբ ուղիղ Ամիդի վրա էր շարժվում, հարձակվեց և գրավեց այն: Հռոմայեցիների կայսր Անաստասիոսը մի քիչ անց այստեղ քաղաք կառուցեց՝ պարսպի մեջ առնելով այն բլուրը, որի վրա էր գտնվում Թեոդոսի ամրոցը: Նա քաղաքին տվեց իր անունը, բայց, այնուամենայնիվ, նրան չհաջողվեց ջնջել քաղաքի հիմնադրի՝ Թեոդոսի անունը, որովհետև թեև մարդիկ կողմնակից են անընդհատ վերափոխել ընդհանուրի կողմից ընդունվածը, սակայն նախկին անուններից դժվար են հրաժարվում: Թեոդոսուպոլսի պարիսպը բավական ստվար [լայն] էր, բայց բարձրությունը չէր համապատասխանում այդ ստվարությանը: Նրա բարձրությունը մոտավորապես երեսուն ոտնաչափի էր հասնում և գրոհող թշնամիների համար, մասնավորապես պարսիկների, այն շատ դյուրամատչելի էր: Նա մատչելի էր նաև այն պատճառով, որ պաշտպանության համար չուներ ոչ նախապարիսպ, ոչ էլ խրամ: Բացի այդ քաղաքին մոտիկ կար մի բարձունք, որը պարսպի վրա էր կախված: Հուստինիանոս կայսրը դրա առաջին առավ հետևյալ կերպ. նախ և առաջ նրա շուրջը շատ խոր խրամ փորեց: Դրանից հետո նշված բարձունքը հարթեց և վերածեց անանցանելի և անելանելի փապարների: Որպեսզի պարիսպը շատ բարձր լինի և միանգամայն անառիկ, նա վարվեց այնպես, ինչպես Դարա քաղաքում: Պարսպի*

*ատամնաշարերը սեղմեց իրար, ատամների միջև թողնելով այնքան տարածություն միայն, որ բավական լիներ այնտեղից հարվածել պաշարողներին, ապա նրանց վրա պարսպի ամբողջ երկարությամբ քարից էմբոլոն կառուցեց, որի վրա վարպետորեն տեղադրեց այլ ատամնաշար: Այնուհետև [պարիսպը] շրջապատեց նախապարիսպով, որի յուրաքանչյուր աշտարակը մի-մի բերդ էր և ամբողջ ամրությունը շատ նման էր Դարա քաղաքի [ամրությանը]: Նա այնտեղ հաստատեց բոլոր զինված ուժերը և Հայքերի զորավարին, ու այնպես արեց, որ հայերը լինեն ավելի հզոր և այլևս չսարսափեն պարսկական հարձակումներից:*

*Բիզանայում կայսրը ոչինչ չկառուցեց, հետևյալ պատճառով. վայրի տեղանքը տափարակ է, նրա շուրջն ընկած դաշտերն երկար տարածության վրա հարմար են ձիավարության համար, բացի դրանից այստեղ կան բազմաթիվ ճահճուտներ, որով նա մի կողմից մատչելի էր թշնամիներին, իսկ մյուս կողմից վտանգավոր՝ բնակիչների համար, հանդիսանալով վարակի աղբյուր: Այդ պատճառով [Հուստինիանոսը] վայրի վրա ուշադրություն չդարձնելով, մի ուրիշ տեղում, Բիզանայից երեք մղոն հեռավորության վրա գտնվող Ցումինա կոչված վայրում հոչակավոր և անառիկ քաղաք կառուցեց՝ տալով իր անունը: Այդ [քաղաքը] գտնվում է լեռնոտ վայրում և շատ լավ օդ ունի:*

***Գլ. 6.** Ահա մոտավորապես այսպիսին էր Հուստինիանոս կայսեր [գործունեությունը] Հայքերում:*

*1. Բյուզանդական հեղինակներն Արևելք ասելով նկատի են ունեցել Միջագետքն ու Ասորիքը:*

*2. Խոսքը Հռոմի կայսր Ալեքսանդր Սևերոսի (205-225) մասին է:*

*3. Նկատի ունի Հայոց Արշակ III (378-387) թագավորին:*

*4. Արկադիոսը (395-408) որդին էր Թեոդոսիոս I Մեծի:*

*5. Այսինքն՝ Բյուզանդիայի կայսր Թեոդոսիոս II Փոքրը (408-450):*

*6. Տե՛ս **Պրոկոպիոս Կեսարացի**, Պարսկական պատերազմի մասին, գիրք Բ, գլ. 3:*

*7. Խոսքը վերաբերում է բյուզանդական Մեծ Հայքին, որն այլ կերպ անվանվում էր նաև Ներքնագույն Հայք:*

*8. Խոսքը հայկական ինքնավար նախարարությունների մասին է:*

*9. Նկատի ունի բյուզանդական Զենոն կայսրին (474-491):*

*10. Այդ ապստամբությունը տեղի է ունեցել 484 թվականին:*

*11. Համապատասխանում է Բալահովիտին (Պալու):*

*12. Կիթարիզոնը հայկական ավանդույթի Կիթառիճն է:*

*13. Այսինքն՝ Մեծ Ծոփք նահանգը:*

*14. Այժմ կոչվում է Բաթման-սու:*

*15. Հայոց Աղձն – Արզն գավառն է Աղձնիք աշխարհում:*

*16. Նկատի ունի պարսիկների զորքը:*

*17. Այսինքն՝ Պարսկահայքից:*

*18. Համապատասխանում է հայկական Հաշտեանք գավառին, եղել է Հայոց Արշակունի թագավորների տան սեփականությունը:*

*19. Խոսքը հայկական Խորձյան գավառի մասին է:*

*20. Հայկական Սատաղ քաղաքն է:*

*21. Ն. Ադոնցի դիպուկ նկատողությամբ սա հայկական Երեզն է:*

*22. Խոսքը հայկական Բաբերդի մասին է:*

*23. Թվարկված չորս բնակավայրերի տեղադրությունն էլ անորոշ է:*

*24. Հայկական Կուկայառիճ բնակավայրն է:*

*25. Այսինքն՝ Ներքնագույն Հայքում:*

*26. Նկատի ունի I, II, III և IV Հայքերը:*

## ՊԱՐՍԿԱ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ 20-ԱՄՅԱ ՊԱՏԵՐԱԶՄԸ (571-591 ԹԹ.) ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՐԿՐՈՐԴ ԲԱԺԱՆՈՒՄՆ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

***Սեբեոսի «Պատմությունից» ստորև տրված հատվածները բերված են Գ. Կ. Խաչատրյանի և Վ. Ա. Եղիազարյանի աշխարհաբար թարգմանությունից (տե՛ս Սեբեոս, Պատմություն, Երևան, 2004):***

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Ժ.*** *Եվ եղավ՝ Խոսրովի՝ Կավատի որդու մահից հետո Պարսից աշխարհի վրա թագավորեց նրա որդին՝ Որմիզդը[1]: Սա Պարսից աշխարհից վերացրեց բոլոր նախարարներին, հներին և բնիկ տոհմերին:*

*... Այն ժամանակ[2] [կար] Վահրամ Միհրևանդակ[3] անունով մեկը՝ Պարսից աշխարհի արևելյան կողմերի զորապետը, որն իր քաջությամբ հաղթեց թետալացիների[4] զորքերին և բռնությամբ տիրեց Բահլին[5] ու ամբողջ քուշանների երկրին՝ մինչև Վեհռոտ կոչվող մեծ գետի այն կողմը, որ կոչվում է Կազբիոն:*

*Այնժամ այն Վահրամը պատերազմ սկսեց մազքութների մեծ արքայի դեմ, որ այդ կողմերում էր՝ մեծ գետի մյուս ափին, հարվածեց զորքերի բազմությանը, պատերազմի ժամանակ սպանեց թագավորին և գրավելով հափշտակեց այդ թագավորության բոլոր գանձերը:*

*Այնժամ իր պատգամավորների միջոցով պարսից արքայի մոտ ավետաբեր հրովարտակներ ուղարկեց և փոքր-ինչ ավարամաս այդ ասպատակի ավարից հասած մեծամեծ գանձերից՝ պատվական իրերից՝ որպես թագավորական տուրք, իսկ ամբողջ գանձը բաժանեց*

*զորքին՝ յուրաքանչյուրին ըստ արժանվույն:*

*Արդ՝ երբ Որմիզդ Թագավորը տեսավ եկած ավետաբերներին, ընթերցեց զորքերի ողջույնի գիրը և ընդունեց ավարամաս ընծաները արքունական պատվական գանձերից, Թեպետև արտաքուստ ուրախանալով՝ մարդկանց սիրաշահեց, բայց ներքուստ ցասումով խորհելով՝ ասաց. «Ընթրիքը առավելագույնս ճոխ է, և դա այս պատառից եմ հասկանում, բայց այդքան շատ գանձերից չարժեր այսքանը հասցնել արքունիքին»:*

*Այնժամ ավետաբեր հրովարտակի փոխարեն հրամայեց հրովարտակ գրել սաստիկ ցասմամբ և արքունի համհարզների ու փուշտիպանների գնդից ուղարկեց [ոմանց], որ գնան այն զորքի մոտ և ամբողջ գանձերը մեջտեղ բերեն: Եվ նրանք գնացին ու սկսեցին պահանջել:*

*Այնժամ ամբողջ զորքն ապստամբեց. սպանեցին արքայի հավատարիմներին և հեռանալով նրա ծառայությունից՝ Վահրամին նստեցրին իրենց Թագավոր: Երդում կնքեցին ըստ իրենց կարգի, միաբանվեցին և դարձան արևելքից ու դիմեցին Ասորեստան, որ սպանեն իրենց Թագավոր Որմիզդին, վերացնեն Սասանական տոհմը և հաստատեն Վահրամին Թագավորության աԹոռին: [Վահրամը] փուԹով հավաքեց արևելքի քաջ ու մարտնչող ցեղերի բազմուԹյունը և առավ գնաց:*

*Արդ՝ մինչ Պարսից աշխարհում այսպիսի խառնաշփոԹ էր տիրում, Հովհան պատրիկը և հունական զորքերը պաշարել պահում էին Դվին քաղաքը, մեքենաներով կռվելով նրա դեմ՝ մոտ էին պարիսպը կործանելուն: Բայց երբ հասավ այս լուրը, Թողին այն ու հեռացան. ճանապարհ ընկնելով դեպի Ատրպատական՝ գրավեցին ամբողջ երկիրը, բոլոր տղամարդկանց և կանանց սրի քաշեցին. առնելով ողջ ավարն ու գերիներին՝ դարձան իրենց երկիրը:*

*Արդ՝ երբ այս աղմուկի լուրը հասավ այն Սասանականի արքունիք՝ պարսից Թագավոր Որմիզդին, պակաս սարսափ չպատեց նրան: Կանչեց նախարարներին, որ արքունիքում էին, և Թիկնապահների ու համհարզների գնդերին. որոշեցին վերցնել Թագավորական գանձն ու արքունի ողջ բազմուԹյունը, կամրջով անցնել մեծ ԴգլաԹ գետի[6] այն կողմը՝ Վեհկավատ:*

*Բայց այսպես չստացվեց, քանի որ արքայի Թիկնապահները, համհարզներն ու նախարարները որոշեցին սպանել Որմիզդին և Թագավոր նստեցնել նրա որդուն՝ Խոսրովին[7]:*

*Եվ բոլոր նախարարները, զորագլուխներն ու զորականները, ով-*

*քեր այդ ժամին գտնվում էին այնտեղ, հավաքվեցին արքունի դահլիճում և մտնելով արքայի սենյակը՝ բռնեցին Որմիզդ թագավորին, իսկույն փորեցին նրա աչքերը, ապա սպանեցին: Եվ Պարսից աշխարհի վրա թագավոր նստեցրին նրա որդուն:*

*Եվ քիչ օրեր անց Վահրամը, ինչպես արծիվը կխոյանար, փութով եկավ հասավ: Եվ քանի որ Խոսրովը թագադրվելիս դեռահաս տղա էր, նրա քեռիները վերցրին նրան, կամրջով անցան մեծ Դգլաթ գետի այն կողմը:*

*Վահրամը եկավ, առավ ամբողջ [արքունական] տունը, գանձն ու արքունի կանանց և նստեց թագավորության գահին: Եվ հրամայեց՝ անցնել գետը՝ Խոսրովին բռնելու:*

*Իսկ նա [Խոսրովը] վախից չկարողացավ դադար առնել այնտեղ: Երբ [կամուրջն] անցնելով փախան գնացին, ճանապարհին խորհեցին, թե ո՞րն ավելի լավ կլինի՝ տաճիկների՞ արքայի[8] մոտ գնալ, թե՞ հունաց թագավորի:*

*Ապա լավ համարեցին իրենց ապավեն դարձնել հունաց թագավորին: «Քանզի թեպետ թշնամություն կա [մեր] միջև, ասում են, սակայն քրիստոնյա են և ողորմած. երբ երդվում են, չեն կարողանում դրժել երդումը»: Եվ ուղիղ ճանապարհով արևմուտք գնալով մտան այն քաղաքը, որ կոչվում է Խաղաբ[9], և դադար առան այնտեղ:*

*Իսկ սա [Վահրամը] թեպետ անցավ գետը, բայց չկարողացավ հասնել. կրկին ետ դարձան Տիզբոն:*

***Գլ. ԺԱ.** Այնժամ Խոսրով արքան նվերներով Մորիկ թագավորի մոտ անվանի մարդիկ ուղարկեց և գրեց այսպես. «Տո՛ւր ինձ իմ հայրերի և նախնիների թագավորության գահն ու երկիրը և ուղարկի՛ր ինձ զորք՝ օգնության, որով կարողանամ զարկել իմ թշնամուն, վերականգնի՛ր իմ թագավորությունը, և կլինեմ քո որդին: Եվ կտամ քեզ Ասորիքի կողմերը, ամբողջ Արվաստանը մինչև Մծբին քաղաք, իսկ Հայոց երկրից՝ Տանուտերական իշխանության աշխարհը մինչև Այրարատ ու մինչև Դվին քաղաք, մինչև Բզնունյաց ծովեզրը՝ մինչև Առեստավան[10], Վրաց աշխարհի մեծ մասը՝ մինչև Տփխիս քաղաք. և խաղաղության ուխտ կնքենք մեր միջև մինչև երկուսիս մահը, և թող անխախտ լինի այս երդումը մեր և մեր որդիների միջև, որ թագավորելու կլինեն մեզնից հետո»:*

*Արդ՝ [Մորիկ] թագավորը հավաքեց ամբողջ ծերակույտը, նրանցից խորհուրդ հարցրեց և ասաց. «Պարսիկներն սպանեցին Որմիզդին՝ իրենց թագավորին, և թագավոր նստեցրին նրա որդուն: Բայց արքունական զորքերը արևելքում թագավոր նստեցրին ուրիշ մեկին,*

*և նա մեծ զորքով եկավ զավթեց թագավորությունը. նրա մանուկ որդին փախստյան դիմելով եկավ մեզ մոտ, մեզնից խնդրում է զորքեր՝ օգնության, և խոստանում է այսպես անել: Արդ ի՞նչ անենք, ընդունե՞նք, արժե՞ ընդունել, թե՞ ոչ»: Իսկ նրանք ասացին. «Չարժե ընդունել, որովհետև մի անօրեն և ամենևին ստախոս ազգ են. իրենց նեղության ժամին խոստանում են կատարել, իսկ երբ խաղաղության մեջ են լինում, ստում են. չատ չարիքներ ենք կրել մենք նրանցից. թող բնաջնջեն իրար, և մենք հանգիստ ապրենք»:*

*Այնտեղ Խոսրով արքան մեծ վտանգի մեջ էր և աչքերի առաջ տեսնում էր մահը, որովհետև ազատվել էր առյուծի բերանից և ընկել թշնամիների բերանը, որտեղից փախուստ չկար:*

*Բայց թագավորը, մերժելով ծերակույտի խորհուրդները, իր կողմից ուղարկեց իր փեսա Փիլիպիկոսին և տանել տվեց հավանության պատասխանը, նրանից երդում առավ և նրան տվեց կայսերական զորք՝ օգնության, հայերի կողմից՝ Հովհան պատրիկին, ասորիների կողմից՝ Ներսես ստրատելատին ու նրանց զորքերը. երեք հազար հեծյալ զորատես անցան՝ ըստ հարյուրակների, հազարյակների, գնդերի և իրենց դրոշների:*

*Նաև Հայոց աշխարհի զորքերը հավաքեցին, որոնք այդ ժամին պատրաստ գտնվեցին. զորահանդես անցան չուրջ տասնհինգ հազարը՝ նախարարների բոլոր գնդերը՝ ըստ հարյուրակների, հազարյակների, գնդերի և իրենց դրոշների: Սրանք բոլորը սպառազեն [էին], ընտիր պատերազմողներ՝ քաջությամբ բորբոքված որպես կրակ, որոնք ոչ վախենում և ոչ էլ թիկունք էին դարձնում: Նրանց դեմքերը՝ առյուծների դեմքեր, ոտքերի թեթևությունը, որպես դաչտերում արագությամբ [վազող] այծյամների թեթևություն: Հոժարամիտ և ամենայն հնազանդությամբ ճամփա ընկնելով՝ գնացին:*

*Արդ՝ միհրացյալ[11] ապստամբը [Վահրամը] առավ իր զորքերը, փղերը և արքունական բոլոր գանձերը, ճամփա ընկնելով գնաց հասավ Ատրպատական, և իրարից քիչ հեռու բանակեցին Վարարատ գավառում:*

*Արդ՝ Վահրամը հրովարտակ գրեց Մուշեղ Մամիկոնյանին և Հայոց մյուս նախարարներին, որը այս էր բովանդակում.*

*«Ես այնպես էի կարծում՝ եթե ես ձեր թշնամիների դեմ մարտնչեմ, դուք էլ այդ կողմից գալով՝ ինձ օգնական կլինեք, որպեսզի ես և դուք միաբանությամբ մեջտեղից վերացնենք տիեզերական պատուհասը՝ Սասանի տունը: Իսկ դուք ահա հավաքվել գալիս եք պատերազմով ինձ վրա՝ դրան օգնելու: Սակայն ես չեմ վախենա այդ հավաքված*

*հռոմեացի երեցներից, որոնք եկել են իմ դեմ: Բայց դուք, հայե՛ր, որ անհարկի տիրասիրություն եք ցույց տալիս, մի՞թե Սասանյան տունը չէր, որ ձեր երկիրն ու տերությունը վերացրեց. և կամ ինչո՞ւ ձեր հայրերը մեկընդմիշտ ապստամբեցին և հրաժարվեցին նրանց ծառայությունից՝ մինչև այսօր պատերազմելով հանուն ձեր աշխարհի: Եվ արդ՝ դիմել գալիս եք իմ դեմ՝ կորուսանելու ձեր այդքան վաստակները. քանզի, եթե Խոսրովը հաղթի, նրանք, երկուսով միաբանվելով, ձեզ մեջտեղից կվերացնեն: Բայց թող ձեզ գերադասելի լինի հեռու մնալ նրանցից, միաբանվել ինձ հետ և օգնության ձեռք մեկնել ինձ: Եվ եթե ես հաղթեմ, երդվում եմ Արամազդ մեծ աստծով, տեր Արեգակով, Լուսնով, Կրակով, Ջրով, Միհրով և բոլոր աստվածներով, որ ես ձեզ կտամ Հայոց թագավորությունը. ում էլ դուք կամենաք, ձեզ թագավոր կդարձնեք: Ձեզ կթողնեմ ամենայն Հայոց երկիրը մինչև Կապկոհ և Աղվանից դուռը, Ասորիքի կողմից՝ Արվաստանը, Մրծուինը[12] և Նոր Շիրականը մինչև տաճիկների սահմանները, որովհետև ձեր նախնիների օրոք իսկ ձերն է եղել, իսկ արևմուտքից՝ մինչև Կապադովկյան Կեսարիա: Եվ ես չեմ համարձակվի Ջարասպից այն կողմ անցնել. և Արյաց այս թագավորության գանձերը պիտի բավականացնեն ինձ և ձեզ, և այդպես ձեզ համար լավ կլինի մինչև ձեր թագավորությունը վերահաստատվի»:*

*Եվ ըստ իրենց կարգի՝ հրովարտակի հետ ծրարված և կնքված աղ կար:*

*Եվ նրանք, վերցնելով հրովարտակն ու ընթերցելով, պատասխան չտվին, իսկ չատերին չասացին էլ, որովհետև վախենում էին իրենց անմիաբանությունից:*

*Եվ արդ՝ նա [Վահրամը] անմիջապես գրեց երկրորդ նամակը.*

*«Գրեցի» ձեզ հեռու մնալ նրանցից՝ ինձ և ձեզ բավական համարելով այս բոլոր աշխարհները և այս թագավորության ամենայն գանձերը. ուրեմն չկամեցաք լսել, որ նամակին պատասխան չտվիք: Ես ձեզ խղճում եմ, – ասում է,– քանզի վաղը առավոտյան պիտի ցույց տամ ձեզ սպառազեն փղեր՝ վրանները՝ քաջ և զինավառ զորականներ, որ ձեզ վրա ձեռնաձգությամբ պիտի տեղան երկաթե նետեր և պնդաձիգ աղեղներից՝ սլաքավոր պողպատե հրաչեկ տեգեր, [պիտի հանեմ] հզոր և սպառազեն կովող երիտասարդներ, արագավազ տաճիկ [արաբական] նժույգներ, տապարներ ու պողպատե կարծր սրեր և բռունցքներ, որչափ Խոսրովին և ձեզ պետք լինեն»:*

*Մուշեղը նրան այսքանը պատասխանեց. «Թագավորությունը Աստծուց է, և ում կամեցավ՝ տվեց. բայց դու պետք է քեզ խղճաս և*

*ոչ մեզ: Եվ ճանաչեցի քեզ՝ որպես պոռոտախոս մարդու, և չես ապավինում Աստծուն, այլ [մարտիկներիդ] քաջությանն ու փղերի զորությանը: Բայց ես քեզ ասում եմ, եթե Աստված կամենա, վաղը քո չուրջ կծավալվի քաջերի կռիվ, [որոնք] քեզ ու քո փղերի բազմության վրա պիտի ճայթեն իբրև երկնքի ամենահզոր ամպեր:*

*Եվ եղավ՝ հաջորդ առավոտյան, մինչդեռ արևը ծագում էր, դասավորվեցին ճակատ-ճակատ և կռվով բախվեցին միմյանց: Սաստիկ խառնիճաղանջ էր, և իրարանցման մեջ կատաղի կոտորած եղավ: Առավոտից մինչև երեկո մարտնչելով՝ երկու կողմերն էլ պատերազմում հոգնեցին:*

*Եվ այնչափ սաստիկ էր կոտորածը, որ արյան առատ վտակները հոսելով ոռոգեցին ամբողջ երկիրը: Եվ չկարողանալով դիմադրել՝ ապստամբ զորքը հունաց զորքերի առաջ փախուստի դիմեց: Իսկ նրանք, մինչև օրվա լրիվ մթնելը հետապնդելով, դաշտերով ու ճամփաներով մեկ ցիրուցան ու դիաթավալ արին. չատերին սպանեցին իրենց սրով սուսերի, իսկ չատերին բռնեցին և ձեռքերը թիկունքներին կապելով՝ բերին կանգնեցրին թագավորի առաջ:*

*Եվ ոչ մի տեղ չկարողացան գտնել Վահրամի հետքը, որովհետև փրկվեց ու այսպես փախստական գնաց ընկավ Բահլ Շահաստան, ուր Խոսրովի հրամանով սպանվեց նրանց իսկ կողմից:*

***Գլ. ԺԲ.*** *Եվ եղավ՝ այն մեծ պատերազմն անցնելուց օրեր հետո, մինչդեռ Խոսրով արքան նստում էր իր վրանում, և պարսից զորքը բանակած էր նրա չուրջը, իսկ հունաց զորքը նրանից հեռու էր մի օրվա ճանապարհով՝ իրենց առատ ավարով առանձին բանակած, և արքայի առջև էին իր բոլոր մեծամեծ նախարարները, արքան սկսեց խոսել ու ասաց. «Ինձ համար ցավալի է այն, որ այն տիրատյացը[13] փրկվեց ու գնաց: Նա քաջ այր է և վերստին այլ զորք կհավաքի արևելքի քաջ ազգերից»:*

*Պատասխան տվեցին նրան և ասացին. «Այն տիրատյացին նրանք [հայերը] ազատեցին, քանզի մեր աչքով իսկ տեսանք, որ այն Մուշեղ Մամիկոնյանը բռնեց նրան, տվեց նրան երիվար ու զենք և արձակեց»: Այս ասացին, որովհետև կամեցան նրան չարիք հասցնել: Իսկ արքան չմտաբերեց, թե ինչ էր [նշանակում] այդ խոսքը, քանզի դեռահաս տղա էր և խակ: Եվ հավատաց սուտ խոսքերին և ասաց. «Թող Մուշեղը կանչվի այստեղ, և թող ոտուձեռը կապվի, մինչև ես նրա մասին հայտնեմ կայսերը»:*

*Նույն ժամին նա հրամայեց գրել նամակ և սուրհանդակներից մեկին ուղարկեց Մուշեղի մոտ. «Փութով արի', ասում է. հույժ կարևոր*

*գործ կա»: Եվ հրաման տվեց իր թիկնապահներին ու ասաց. «Պատրա՛ստ եղեք, որ երբ նա գա, և ես ձեռքով նշան անեմ ձեզ, հանկարծակի նրա ձեռքերը ոլորեցեք և կապեցեք նրան. բայց պատրաստ եղեք, զի նա քաջ մարդ է, և չլինի թե կամ ինքը մեռնի կամ ինձ սպանի: Իսկ եթե հենց ինքը մեռնի, ես նրա համար պատասխան պիտի տամ կայսերը»: Այսպես և բարապաններին պատվեր տվեց, ասաց. «Զգո՛ւյշ կացեք, որ երբ Մուշեղը գա իմ վրանի դուռը, հանեցե՛ք նրա մեջքից գոտին ու սուսերը՝ ասելով. «Օրենք չէ զենքով մտնել թագավորի մոտ»:*

*Արդ՝ մինչդեռ նա [Մուշեղը] իր զորքերի մեջ զորահամար էր կատարում՝ ճշտելու ողջերի ու մեռածների թիվը, որոնք ընկան այն պատերազմում, սուրհանդակը եկավ կանգնեց նրա առաջ, ողջունեց նրան ու տվեց այն նամակը: Իսկ Մուշեղը, վերցնելով նամակը, ասաց նրան. «Ողջությո՞ւն է ու խաղաղությո՞ւն»: Սուրհանդակը պատասխան տվեց և ասաց. «Ողջություն է ու խաղաղություն, և ուրիշ ոչինչ ես չգիտեմ, բայց միայն այն, որ ինձ հրամայվեց քեզ չտապ կանչել»: Եվ իսկույն նեթ պատրաստվեց նա որպես պատերազմի, քանզի մտածեց, թե գուցե պատերազմի գործ կա կամ ինչ-որ պարգևատրություն վաստակների դիմաց: Եվ ազատներից ու անազատներից վերցրեց իր հետ երկու հազար սպառազեն տղամարդ, որոնց համարում էր պատվի արժանի և վստահ էր նրանց ձիավարելուն:*

*[Մուշեղը] հրամայեց նրանց ամենքին, որ յուրաքանչյուրը կրի իր զենքն ու զրահը: Ինքը ևս կապեց իր զենքերը: Զինվեցին և գնացին:*

*Եվ եղավ՝ երբ մտան բանակի մեջ և մոտենում էին արքունի կանանոցի վրանին, հրաման հասավ, որ այնքան բազմությամբ չգնա, այլ նրանց հեռու նստեցնի, իսկ ինքը սակավ մարդկանցով ներկայանա արքային:*

*Բայց նա հանձն չառավ այդպես անել, այլ զորականներով գնաց արքունի խորանի դռան մոտ, և պարսից զորքը սպառազինված կանգնել էր վրանի չուրջը: Իջնելով ձիուց՝ 50 մարդկանցով գնաց վրանի դուռը: Եվ զորականները զինված կանգնած էին այդպես՝ յուրաքանչյուրն իր երիվարով: Զարհուրեցին արքան ու նրա ողջ զորքը և սկսեցին թաքցնել նենգությունը: Եվ եղավ՝ երբ հասավ վրանի դուռը, բարապանները մոտեցան և ասացին. «Հանի՛ր քո մեջքից գոտիդ և սուսերդ, արձակի՛ր քո վրայից զենքերդ, քանզի օրենք չէ [այդպես] մտնել թագավորի մոտ»: Կասկած ընկավ նրա սիրտը, սկսեց պատրաստվել հարձակման: Պատասխան տվեց բարապաններին և ասաց. «Իմ նախնիների և պապերի [օրերից ի վեր] իմ մանկությունից սննդակից եմ եղել թագավորներին ու այժմ հասել եմ արքա-*

*յի դուռը՝ Հանդիսության: Եվ իմ վրայից պիտի արձակե՞մ կամարս ու գոտիս, որը երբեք չեմ հանում իմ տանը [նույնիսկ] ուրախության ժամին: Եվ կամ ինձ արժե՞ իմանալ պարսիկներիդ չարությունը»: Եվ զինվորներից մեկին հրաման տվեց գնալ, որպեսզի զորականներին առաջ բերի օգնության, իսկ ինքը շրջվեց՝ կրկին ետ գնալու:*

*Լուր տրվեց արքային, թե չկամեցավ այդպես մտնել, այլ շրջվեց, կրկին ետ գնաց: Թագավորն սկսեց թաքցնել չարությունը և ասաց. «Արդ՝ մի կողմ թողեք այդ մտադրությունը, թող գա, ինչպես և կամենա»: Քանզի ինքը մանուկ էր, իսկ զորքերի ուժը՝ թույլ: Կանչեցին կրկին և ասացին. «Հրաման տվեց մտնել, ինչպես և կամենում ես»: Նա դարձավ և ասաց. «Մի տեսնեմ, թե ի՞նչ բարիք է մտածում տալ ինձ արքայից արքան»:*

*Եվ [նա] յոթ հոգով մտավ վրանը՝ արքայի մոտ, խոնարհվեց երեսնիվայր, երկրպագեց արքային ու կանգնեց: Բայց արքան իր ձեռքը չմեկնեց, ինչպես նախկինում՝ ընդունելու նրան և ողջունելու, այլ մնաց այդպես համառ:*

*Արքան երկյուղեց ու չկարողացավ հրաման տալ, ինչպես խորհել էր, և վախից որևէ [բան] ասել: Եվ [Մուշեղը] չտապ ելավ վրանից. մոտեցրին նրան երիվար, հեծավ ու գնաց: Եվ եղավ՝ երբ արքան այդ տեսավ, հույժ երկնչեց և կամեցավ թաքցնել իր մեղքը, ոտքի ելավ գահույքից և գնաց դեպի վրանի դուռը, դուրս եկավ և նրա հետևից ուղարկեց մի անվանի նախարարի: Տանել տվեց կնքված աղ՝ երդումը, և [հրամայեց] կրկին կանչել, «որպեսզի պատվով ու մեծարանքով գնաս այստեղից, ասում է, և հոգուդ մեջ մի՛ կարծիր, թե քո մասին այլ բան եմ խորհում»: Իսկ Մուշեղը չկամեցավ և գնաց իր ճամփան:*

*Այնժամ Խոսրովը ճամփա ընկնելով Ատրպատականից, գնաց Ասորեստան՝ իր բուն թագավորական նստավայրը: Եվ հաստատվեց թագավորության աթոռին և կայսերը տված խոստումները կատարեց. տվեց նրանց ամբողջ Արվաստանը մինչև Մծբին և Հայոց աշխարհը, որ իր իշխանության տակ էր, Տանուտերական տունը մինչև Հրազդան գետը, Կոտայք գավառը մինչև Գառնի ավանն ու մինչև Բզնունյաց ծովի եզրը՝ մինչև Առեստավան, և Կոգովիտ գավառը մինչև Հացյուն և Մակու: Իսկ Վասպուրական գնդի կողմը պարսից արքայի ծառայության տակ էր: Հայոց նախարարներից շատերը հունաց բաժնից էին, իսկ քչերը՝ պարսից: Տվեց նաև Վրաց աշխարհի մեծ մասը՝ մինչև Տփխիս քաղաքը[14]: Բայց այն Մուշեղին թագավորը կանչեց պալատ, և [նա իր] երկիրն այլևս չտեսավ:*

*1. Կավադ I-ի որդի Որմիզդ IV (579-590):*

*2. Իրադարձությունները տեղի են ունեցել 590 թվականին:*

*3. Խոսքը նշանավոր Վահրամ Չուբինի մասին է:*

*4. Թետալացվոց աշխարհը անտիկ հեղինակների Սոգդիանան է, երբեմնի Բակտրիան:*

*5. Քուշանների մայրաքաղաքն է. գտնվել է այժմյան Աֆղանստանի հյուսիսում:*

*6. Այստեղ հեղինակն ի նկատի ունի Միջագետքը:*

*7. Պարսկա-բյուզանդական 20-ամյա պատերազմի ժամանակ (671-691) ռազմական գործողությունների մի զգալի մասն ընթացել են Հայաստանի տարածքում: Այստեղ խոսքը բյուզանդական զորավար Հովհան Մյուստակոնի կողմից Դվինի պաշարման մասին է, ուր ամրացել էին պարսկական զորքերը:*

*8. Այսինքն՝ արաբների:*

*9. Տեղադրությունը հայտնի չէ:*

*10. Ավան Վասպուրականի Առբերան գավառում՝ Բերկրի գետի գետաբերանի մոտ:*

*11. Այսինքն՝ աստվածացյալ:*

*12. Խոսքը հավանաբար Մծբին քաղաքի մասին է:*

*13. Նկատի ունի Վահրամ Չուբինին:*

*14. Ամբողջ այս հատվածը վերաբերում է 591 թ. պարսկա-բյուզանդական հաշտության պայմանագրին: Առանձին վրիպումներով հանդերձ, Սեբեոսը ճշգրտորեն է ներկայացրել երկու տերությունների նոր սահմանագիծը:*

## ՍԵԲԵՈՍԸ ՄՈՐԻԿ ԿԱՅՍԵՐ ՀԱՅԱՀԱԼԱԾ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### *ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

***Գլ. ԺԵ.*** *Այն ժամանակ հունաց Մորիկ թագավորը հրամայեց գրել ամբաստանագիր պարսից [Խոսրով] թագավորին ողջ Հայաստանի իշխանների և նրանց զորքերի մասին: «[Հայերը] մի խոտոր և անհնազանդ ազգ են,– ասում է,– գտնվում են մեր միջև և պղտորում են: Բայց ե՛կ,– ասում է,– ես իմոնց հավաքեմ և ուղարկեմ Թրակիա, և դու քոնոնց հավաքի՛ր և հրամայի՛ր տանել արևելք: Որ եթե մեռնեն [մեր] թշնամիները կմեռնեն, և եթե սպանեն, [մեր] թշնամիներին[4] կսպանեն, և մենք խաղաղ ապրենք: Որովհետև եթե դրանք [հայերը] իրենց երկրում լինեն, մեզ հանգիստ չի լինի»:*

*Երկուսով միաբանվեցին: Եվ կայսրն սկսեց հարկադրել, որ հավաքեն բոլորին և ուղարկեն Թրակիա, և սաստիկ շտապեցնում էր, [որ] հրամանը կատարվեր: Եվ սկսեցին [հայերն] այն կողմից փախչել ու գալ պարսիկների թագավորին ի ծառայություն, մանավանդ նրանք,*



***Մորիկ կայսեր դրամը***

*որոնց տիրույթները նրա իշխանության տակ էին: Իսկ նա [Խոսրովը] մեծարանքներով ընդունում էր բոլորին և ավելի մեծ պարգևներ էր պարգևում նրանց, քան կայսրը. մանավանդ, երբ տեսնում էր նրանց փախուստը կայսրից, առավել ևս մեծ սիրով էր կամենում բոլորին իր կողմը գրավել:*

***Գլ. ԺԷ.*** *... Իսկ թշնամիները[1], որ Թրակիայի կողմերից էին, անհուն զորքերի բազմությամբ թալանեցին [Հունաց] թագավորությունը, հաճեպ պատերազմների միջոցով կամեցան վերացնել հռոմեացիների տերության ազգերին և անձամբ տիրել թագավորության արքայանիստ քաղաքին:*

***Գլ. ԺԸ.*** *Այնժամ հունաց թագավոր [Մորիկը] հրաման տվեց իր բոլոր զորքերին, որ արևելքի կողմում էին, ժողովվել, որովհետև խաղաղություն էր, և նա Պարսից տերության կողմից Ասորիքի [հետ կապված] ոչ մի հարց չուներ: Հրաման տվեց բոլորին անցկացնել ծովով և ուղարկել Թրակացիների կողմերը՝ ընդդեմ թշնամուն: Հրաման տվեց դարձյալ Հայաստանից հավաքել ամբողջ այրուձին և նախարարական զորագլուխներին, որոնք հմուտ էին և կարող էին դիմադարձ կանգնել նիզակամուխ մարտում: Եվ հրաման տվեց դարձյալ հույժ բազում զորք հանել Հայոց աշխարհից, բոլորն էլ՝ կամավոր և ընտիր հասակով, կազմել գինվառ գնդեր և բոլորին անցկացնել Թրակացիների աշխարհը՝ ընդդեմ թշնամուն. և նրանց զորագլուխը Մուշեղ Մամիկոնյանն [էր]:*

*Արդ՝ նրանք հարձակվեցին այն ցեղերի վրա, որ բռնել են Դանուբ մեծ գետի ափերի արևմտյան կողմերը: Եվ սաստիկ պատերազմ եղավ այն երկրի վրա. խորտակվեց այն թշնամու զորությունը հունաց զոր-*

*քերի առաջ, և փախստյան մատնեցին Դանուբ գետի մյուս կողմը: Եվ իրենք մեծ հաղթությամբ կայսերը և ամբողջ պալատին փութով ավետաբեր սուրհանդակ ուղարկեցին:*

***Գլ. ԺԹ.*** *Կայսեր կողմից դարձյալ ելավ այլ հրաման՝ Հայաստան երկրի բոլոր երկրներում քարոզել Քաղկեդոնի ժողովը և հաղորդությամբ միավորվել իր զորքի հետ: Հայ եկեղեցիների ուխտի սպասավորները փախչելով գնացին օտար երկրներ: Շատերը, անտեսելով այդ հրամանը, մնացին տեղում: Իսկ չատերը, փառասիրությամբ հավանություն տալով, հաղորդվելով միավորվեցին հավատով: Ապա կաթողիկոսական աթոռը բաժանվեց երկու մասի. մեկի անունը՝ Մովսես[2], իսկ մյուսինը՝ Հովհան[3]: Մովսեսը՝ Պարսից կողմում, իսկ Հովհանը՝ Հունաց:*

*Հովհանը, նրանց հետ հաղորդվելով, միավորվեց, իսկ Մովսեսն ամենևին չմոտեցավ նրանց: Ամբողջ սպասքը, որ Դվինի Սուրբ Գրիգոր եկեղեցում էր, տարան պահեցին Կարին քաղաքում: Այնուհետև այնտեղից [Հովհանը] գերեվարվեց Պարսից երկիր՝ Ահմատան չահաստան:*

***Գլ. ԺԻ.*** *Այն ժամանակ դարձյալ հրաման ելավ կայսրից՝ Հայոց աշխարհից վերստին ստուգել[4] և պահանջել 2000 ընտիր սպառազեն այրուձի, տալ երկու հավատարիմ այրերի և չատ չտապ ուղարկել:*

*Այնժամ փնտրտուքի մեջ ընկնելով՝ ընտրեցին 2000 սպառազեն մարդ և տվեցին երկու հավատարիմ այրերի. մի հազարը Սահակ Մամիկոնյանի, իսկ մի հազարը Մանվելի որդու՝ Սմբատ Բագրատունու ձեռքը: Նրանց միևնույն ճանապարհով չուղարկեցին, այլ Սահակ Մամիկոնյանին մի հազարի հետ ուղարկեցին Սեբաստիայով, իսկ Սմբատ Բագրատունուն մյուս հազարի հետ՝ Խաղտիքի կողմերով: Սահակը զորքը տարավ հասցրեց պալատ և ներկայացավ թագավորին:*

*Իսկ Սմբատը, Խաղտիք հասնելով, ըմբոստացավ, քանզի զորքը ճանապարհին վախեցավ՝ չկամենալով գնալ այնտեղ, ուր թագավորն էր պահանջել: Կատարված դեպքերի [մասին] լուր տվին թագավորին. ապա հրովարտակի ու հավատարիմ բանագնացների միջոցով [Սմբատին] երդմամբ խոստացավ մեծ պատվով խսկույն ուղարկել իր երկիրը: Իսկ զորքին խոստացավ մեծամեծ պատիվներ և ինչք. և այդպես ողոքելով հանդարտեցրեց: Եվ գնալով միաբան ներկայացան թագավորին: Թագավորը սպառազինեց զորքը, հանդերձավորեց և ուղարկեց Թրակիայի սահմանները, իսկ Սմբատին մեծ պատվով և չատ ունեցվածքով կրկին ուղարկեց հասնելու իրենց երկիրը:*

*Ապա Հայոց նախարարները դարձյալ սկսեցին միաբանվել և ուզում էին դուրս գալ Հունաց թագավորի ծառայությունից ու իրենց թագավոր նստեցնել[5], որպեսզի իրենց ևս չվիճակվի մեռնել Թրակիայի կողմերում, այլ ապրել և մեռնել Հանուն իրենց աշխարհի: Բայց նրանք իրենց ներսում հաստատուն չպահեցին միաբանությունը, այլ նրանցից ոմանք բանսարկությամբ այդ մտադրությունը հասցրին թագավորի ականջին և իրենք, այստեղ-այնտեղ թաքնվելով, խույս տվեցին:*

*1. Խոսքը թրակացիների ցեղային միության մասին է:*

*2. Նկատի ունի Հայոց կաթողիկոս Մովսես Բ Եղիվարդեցուն (574–604):*

*3. Սա բյուզանդացիների կողմից կաթողիկոս հռչակված Հովհաննես Բագարանցի եպիսկոպոսն է (590–610), որն աթոռանիստ դարձրեց Երևանից ոչ հեռու գտնվող Ավան գյուղաքաղաքը: Հակաթոռ այս կաթողիկոսի իրավասությունները տարածվում էին միայն Բյուզանդական Հայաստանում:*

*4. Այսինքն՝ հաշվառել:*

*5. Արժեքավոր վկայություն է, որն ապացուցում է, թե հայկական նախարարական միջավայրում չէր վերացել սեփական պետականության վերականգնման վեհ գաղափարը:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԻԴ.*** *Եվ եղավ՝ այն ժամանակ Սմբատ Բագրատունին[1] սիրելի դարձավ Խոսրով արքայի աչքում. [արքան] տվեց նրան Վրկանա երկրի2 մարզպանությունը[3], նրան կարգեց այն բոլոր կողմերի վրա իշխան, պատիվներով և իշխանությամբ առավել մեծարեց. նրան լիացրեց ոսկով ու արծաթով, զարդարեց պատվական և երևելի զգեստներով: Նրան տվեց իր հոր՝ Որմիզդի գոտին ու սուսերը, պարսից ու հայկական զորքերը գումարեց նրա ձեռքի տակ, հրամայեց գնալ իր իշխանության երկիրը:*

***Գլ. ԻԵ.*** *Եվ եղավ՝ երբ հաջորդ տարին եկավ, թշնամիների բոլոր գնդերը հավաքվեցին և գնացին բանակեցին Տապարաստան գավառում. Սմբատը ևս հավաքեց իր ողջ զորքը և դիմադարձ կանգնեց նրանց պատերազմով: Եվ Տեր Աստվածը թշնամիների զորքը մատնեց Սըմբատի ձեռքը, և նա սպանեց բոլորին սրով սուսերի, իսկ*

*փրկվածները փախան գնացին իրենց տեղերը:*

*Այնժամ Խոսրով թագավորը մեծ գոհունակությամբ նրան հրովարտակ առաքեց պատվով ավելի բարձրացրեց իր տերության բոլոր մարզպաններից, և նրան մատովականության համար ուղարկեց ամենայն ոսկի անոթներ, թագավորական հանդերձներ, ոսկեզօծ արտախուրակներ[4] և մարգարիտներով ու թանկագին քարերով հյուսված զանգապանակ, իսկ նրա որդուն, որի անունը Վարազտիրոց էր, և որին դաստիարակել էր որպես իր որդիներից մեկին, և մեծարգո էր ողջ արքունի դռանը, կարգեց [իրեն] մատովակ՝ գինի մատուցելու համար:*

*Եվ Սմբատը 8 տարի վարեց այն աշխարհի մարզպանությունը: Սրանից հետո՝ [Խոսրովի] թագավորության 18-րդ տարում, հրաման հասավ բազում մեծարանքով կանչել նրան արքունի դուռը, և [Խոսրովը] նրան հրամայեց գնալ տեր դառնալ իր երկրին[5]:*

*Արդ՝ նա արքայից հրաման խնդրեց Դվին քաղաքում կառուցել Ս. Գրիգոր եկեղեցին[6]: Եվ քանի որ երանելի Մովսես կաթողիկոսը[7] վախճանվել էր, և այնտեղ վարդապետ չկար, առավել ևս փութաց արքայից հրաման խնդրել, ու երբ հրամանը հասավ իր երկիր, մեծ աթոռի համար հարցուփորձ արեց, որպեսզի նրա վրա կարգեն բարեխնամ տեսուչ և իր փրկության առաջնորդ: Եվ հայրապետության աթոռին նստեցրին Ռշտունյաց եպիսկոպոսին՝ Աբրահամին[8]: Ապա սկսեցին հիմնադրել եկեղեցին. ժողովեց հմուտ քարագործներ, նրանց վրա հավատարիմ վերակացուներ կարգեց և հրաման տվեց փութով ավարտին հասցնել:*

*Եվ բերդակալն ու մարզպանը ամբաստանագիր՝ գրեցին արքային. «Եկեղեցին բերդին շատ մոտ է և թշնամու կողմից՝ վտանգավոր»: Հրաման եկավ արքայից. «Թող բերդը քանդվի և շուտով նույն տեղում կառուցվի եկեղեցին»: Ամե՛ն:*

***Գլ. ԻԸ.** Եվ եղավ՝ երբ ձմեռն անցավ, գարնան գալուն պես սուրհանդակները հրովարտակներով հասան և նրան մեծ շուքով կանչեցին արքունի դուռը[9]: Գնաց ներկայացավ թագավորին Մեծ անվանված Դաստակերտում և դուրս գալով դահլիճից՝ նստեց [իր] բարձին:*

*Այնժամ արքան նրան տվեց տանուտերությունը, որ անվանվում է Խոսրով Շում[10], զարդարեց չքնաղ զարդերով, ընհեզյա գդակով և ոսկեզօծ պատմուճանով, մեծարեց ահագին պատիվներով՝ ականակապ վարսակալով ու մանյակով և արծաթյա գահերով. ուղարկեց նրան արքունական տուրքն ու երկրի դիվանը: Տվեց նրան քառաձայն փողեր և արքունի հետևակներից՝ նրա դռան համար պահապաններ:*

*Նրան սաստիկ աՀեղությամբ ուղարկեց արևելք՝ քուշանների երկիրը և Հրամայեց նրան՝ մարզպան կարգել, ում ինքը կամենա: Իսկ սա, գնալով այնտեղից, եկավ Հասավ իր նախկին իշխանության մերձակա երկիրը՝ Կոմշ, և Վրկանից կանչեց իր մոտ իր բնաշխարՀիկ սեփական զորքը[11] ու գնաց ուղիղ դեպի արևելք:*

*Եվ սրանք են Հայոց նախարարների զորապետները, որոնք յուրաքանչյուրն իր գնդով և դրոշով նրա Հետ էին՝ Վարազշապուհ Արծրունի, Սարգիս Տայեցի, Արտավազդ, Վստամ և Հմայակ ԱպաՀունիներ, ԱպաՀունյաց տեր Մանվել, Գողթնյաց տեր Վռամ, Սարգիս Դիմաքսյան, Սարգիս Տրպատունի և նախարարներից ուրիշներ: Նաև իր զորքը աշխարՀից՝ շուրջ երկու Հազար Հեծյալ: Տեսավ, որ քուշանների զորքերն ասպատակելով սփռվել էին ամբողջ երկրի վրա, որոնք, երբ լսեցին նրա Համբավը, Հավաքվեցին ու Հեռացան. և սա, Հետապնդելով նրանց, փութով Հասավ: Իսկ նրանք, երբ տեսան նրան իրենց Հետևից Հասած, ետ դարձան և ճակատ կազմեցին, բախ<վ>եցին միմյանց պատերազմով, այդտեղից քուշանների զորքերը փախուստի դիմեցին և Հալածվեցին Խոսրով Շումի զորքերի կողմից. նրանցից շատերը մեռան, իսկ շատերը փախան գնացին:*

*Այնժամ ավետաբեր սուրՀանդակները փութով Հասան Խոսրով արքայի մոտ, լրիվ պատմեցին կատարված քաջագործությունը: Իսկ Խոսրով արքան մեծ խնդությամբ ուրախացավ ու զվարճացավ և Հրամայեց զարդարել մի մեծ փիղ ու բերել դաՀլիճ. Հրամայեց նրա վրա նստեցնել նրա որդուն՝ Վարազտիրոցին, որն արքայի կողմից անվանվում էր Ջավիտյան Խոսրով[12]: Հրամայեց գանձեր շաղ տալ ամբոխին, մեծ գոՀունակությամբ նրան Հրովարտակ գրեց և մեծ պատվով ու շքեղությամբ կանչեց նրան արքունիք:*

***Գլ. ԻԹ.*** *Եվ եղավ՝ երբ մոտեցավ արքունիքին մեկ օրվա ճանապարՀով, Թագավորը բոլոր նախարարներին և իր զորքերին Հրաման տվեց լինել նրան ընդառաջ, իսկ օգնականներին Հրամայեց Թագավորական ախոռից նրան ընդառաջ տանել նժույգ՝ արքունական սանձ ու Թամբով, և [նա] գնաց մեծ շուքով ու փառքով ներկայացավ Թագավորին:*

*Իսկ նա [Խոսրովը] տեսնելով՝ խնդությամբ ընդունեց նրան, մեկնեց իր ձեռքը նրան, և նա, Համբուրելով նրա ձեռքը, երեսնիվայր ընկավ: Այնժամ արքան նրան ասաց. «Հավատարմությամբ վաստակեցիր, և մենք շատ գոՀ ենք քեզնից. արդ՝ այսուՀետև շատ մի՛ չարչարվիր պատերազմի լինել, այլ մնա՛ այստեղ մոտիկ, ա՛ռ, կե՛ր ու խմի՛ր և մասնակցի՛ր մեր ուրախությանը»: Եվ նա [Սմբատը] Խոսրով արքայի Թա-*

*գավորական պալատում երրորդ նախարարն էր[13]. քիչ ժամանակ ապրելով՝ վախճանվեց նրա թագավորության 28-րդ տարում[14]։ Իսկ նրա դին տարան Հայաստան երկիր՝ [իր] ընիկ հանգստարանը և գերեզման դրին Դարույնք գյուղում, որ Կոգովիտ գավառում է։*

*Գլ. Խ. Այնժամ Կավատ արքան[15] կանչեց Վարազտիրոցին՝ Խոսրով Շում կոչված Սմբատ Բագրատունու որդուն, և տվեց նրան Հայաստանի տանուտերության իշխանությունը, նրան մարզպան արձակեց և հայրենի ողջ ունեցվածքով ուղարկեց Հայաստան, որպեսզի աշխարհը պահի շենության մեջ։ Երբ նա եկավ Հայաստան, ողջ Հայաստան աշխարհը խնդությամբ ընդունեց նրան[16]։*

*Եվ արդ՝ մինչդեռ Կավատ արքան խորհում էր աշխարհի շենության մասին և կամենում էր բոլոր կողմերում խաղաղություն հաստատել, վեց ամիս թագավորելով վախճանվեց։ Թագավոր նստեցրին Արտաշիրին, նրա որդուն, որը դեռահաս տղա էր[17]։*

*Գլ. ԽԱ. Իսկ [պարսից] թագավորների, կողմից Ջավիտյան Խոսրով անվանված ասպետ Վարազտիրոցը՝ մեծ Խոսրով Շումի որդին, լիովին շենացրեց ողջ Հայոց աշխարհը, բայց չհնազանդվեց [պարսից] մեծ իշխանին, որ Ատրպատական աշխարհում էր, և որին Խոռոխ Որմիզդ էին կոչում։ Ոչ էլ նրանից հետո՝ նրա որդի Ռոստոմին, որն իշխում էր Ատրպատականի կողմերում։ Եվ մեծ գժտություն կար երկուսի միջև[18]։ Ապա նաև Հունաց [կողմի] զորավար Մժեժ [Գնունին] ինքն էլ սկսեց չարախոսել ասպետի մասին Ռոստոմ իշխանի մոտ, որն Ատրպատական աշխարհում էր։ «Թող սա չմնա Հայաստանում, ապա թե ոչ՝ մեծ գժտություն կընկնի երկու թագավորների միջև»։ Եվ նա [Ռոստոմը] ուղարկեց իր դարիքպետ[19] եղբորը, որ գնա ձմեռի Դվինում, և ապա ձերբակալեն ասպետին ու առնեն գան։ Արդ՝ քանի որ պարսից ողջ զորքը սիրում էր ասպետին, երևելի իշխաններից մեկն այնտեղից լուր տվեց նրան և ասաց. «Փրկի՛ր քեզ, քանզի վաղը քեզ կալանելու են»։ Եվ ասպետը, վերցնելով իր կնոջն ու որդիներին, գիշերով փախավ ու ճանապարհ ընկնելով՝ մեկնեց դեպի Տարոն։ Գնալով այնտեղ՝ հավաքեց իր զորքերը, Հերակլ[20] թագավորից երդում խնդրեց, որ իրեն չի վտարի իր աշխարհից, և ստանալով հավատարմության երդումը՝ գնաց ներկայացավ նրան Ասորեստանկյայց աշխարհում։ Այնժամ Հերակլ թագավորը երդվեց նրան և ասաց. «Կարճ ժամանակ կմնաս ինձ մոտ, ապա մեծ պատվով քեզ կուղարկեմ քո երկիրը»։ Եվ մեծարեց նրան բոլոր պատրիկներից ավելի, որ կային նրա թագավորության մեջ։ Եվ երբ [ասպետը] գնաց պալատ, նրան տվեց թագավորական ապարանք, արծաթի գահույք և հույժ*

*բազում գանձեր: Իսկ նրա որդի Սմբատը Հերակլի սենեկապետի սիրելին էր:*

*Եվ մեծ իրադարձությունների ժամանակ այս չարանենգությունն է եղել Հերակլ կայսեր որդու մեջ, որի անունը Աթալարիկոս էր, և որը խոցոտեց Հոր սիրտը, [հոգեպես] հոշոտեց հրաշալի անձնավորությանը ու նրա երեսի գեղեցկությունը՝ դառնալով իր և շատերի կորստյան պատճառը: Քանզի սա, Թեոդորոսը՝ Հերակլի եղբորորդին՝ մագիստրոս կոչվածը, քաղաքի մեծամեծներից շատերը և Վահան Խորխոռունին – սրանք ամենքը միաբանվեցին՝ Հերակլին սպանելու և նրա որդուն՝ Աթալարիկոսին, թագավորության աթոռին նստեցնելու[21]: Այդ խորհրդում էր գտնվել նաև Վարազտիրոցը՝ Խոսրով Շում Սմբատի որդին, բայց չէր համաձայնել թագավորի ու նրա որդիների սպանմանը, այլ ասել էր. «Դուք նրանց Աստծու տեղապահ եք ասում, ուստի պետք չէ, որ այդ բանը կատարվի, և այդ որոշման մեջ ես համաձայն չեմ ձեզ հետ»: Խորհրդի բաները լրիվ պատմվեցին թագավորի ականջին ոմն կորատորի կողմից, որ եղել էր այդ խորհրդում: Երբ թագավորը հավաստորեն վերահասու եղավ, հրամայեց առավոտյան բռնել իր որդուն, եղբորորդուն և բոլորին, ովքեր նրանց հետ էին, կտրել բոլորի քթերն ու աջ ձեռքերը: Իսկ ասպետին պատգամ հղելով՝ ասաց. «Փոխանակ այն բանին, որ դու այդպես վարվեցիր իմ հանդեպ և չկամեցար ձեռքերդ լվանալ իմ և իմ որդիների արյամբ, ես նույնպես ձեռք չեմ բարձրացնի քո և քո որդիների վրա: Գնա ապրի՛ր՝ որտեղ որ քեզ կհրամայեմ և քո հանդեպ ողորմություն կանեմ»: Եվ թեպետ կողքից շատ աղաղակեցին՝ «Թող մեռնի», սակայն նա չկամեցավ լսել նրանց: Այլ հրամայեց նրան, կնոջն ու որդիներին տանել մի կղզի՝ տառապանքի քաղաքը, որն Աքսոր են կոչում[22]:*

*Այդ խորհրդում էր գտնվել նաև Դավիթ Սահառունին, որին կալանելով՝ Մժեժն առաքեց պալատ: Ճանապարհին իր կապանքները կտրելով՝ [Դավիթը] սպանեց մարդկանց, որոնք տանում էին իրեն: Եվ այնտեղից վերադառնալով՝ հայոց զորքերը միաբանեց իր շուրջը, հարձակվեց հունաց զորավար Մժեժ Գնունու վրա, զարկեց սպանեց նրան և Վարազ Գնել Գնունուն: Եվ բոլոր զորքերի կամակցությամբ ու սիրով ստանձնեց զորավարությունը[23]:*

*Իսկ թագավորն իշխանների խնդրանքով նրան իշխան կարգեց բոլոր երկրների[24] վրա, տվեց նրան կյուրապաղատության աստիճան ու նրան կարգեց իրեն ի ծառայություն. [նա] երեք տարի ամենայն ճոխությամբ վարեց իշխանությունը: Ապա, անարգվելով զորքերի կողմից, հալածվեց, և բոլոր ազատները պառակտվելով՝ կորստյան մատնեցին Հայոց երկիրը: Բայց միայն Ռշտունյաց գավառի աստվածասեր*

*և քաջ իշխան Թորոսն[25] էր հանապազ պատրաստ պահում իր կողմի զորքերը և ըստ իր չափազանց իմաստնության՝ տիվ ու գիշեր հսկում. և թշնամիներից քչերին վնաս չպատճառեց: Շինելով Աղթամար կղզին՝ [վտանգի ժամին] պատսպարում էր այնտեղ բազմաթիվ գավառների [բնակիչներին]:*

*1. **Սմբատ Բագրատունի** (Բազմահաղթ, Խոսրով Շում) – վաղ միջնադարի հայ քաղաքական ամենաազդեցիկ գործիչներից է: Որդին է Վչիկ Բագրատունու: Երիտասարդ հասակից զինվորական ծառայություն է կատարել պարսից բանակում և հռչակվել իբրև տաղանդավոր զորավար:*

*2. Ընդարձակ երկիր Կասպից ծովից հարավ-արևելք:*

*3. Սմբատ Բագրատունին Վրկանաց մարզպան է եղել 600–607 թվականներին:*

*4. Այսինքն՝ խույր, ապարոշ:*

*5. Սմբատ Բագրատունին Հայոց մարզպան է եղել 607–608 թվականներին:*

*6. Սմբատ մարզպանը ոչ թե կառուցել, այլ վերաշինել է Դվինի Ս. Գրիգոր եկեղեցին, որն ավերվել էր 571–572 թթ. իրադարձությունների ժամանակ:*

*7. Խոսքը Մովսես Բ Եղիվարդեցի կաթողիկոսի (574–604) մասին է:*

*8. Խոսքը Հայոց կաթողիկոս Աբրահամ Ա Աղբաթանեցու (607–615) մասին է:*

*9. Սմբատ Բագրատունին ետ է կանչվել 608 թ. և դարձյալ նշանակվել Վրկանից մարզպան:*

*10. **Խոսրով Շում** – պատվանուն է, որը նշանակում է «Խոսրովի ուրախություն»:*

*11. Այսինքն՝ հայկական զորքը:*

*12. Պատվավոր կոչում է, որ բառացիորեն նշանակում է՝ «Հավիտյան Խոսրով»:*

*13. Այս իրադարձությունները տեղի են ունեցել 610 թվականին:*

*14. Սմբատ Բագրատունին մահացել է մոտ 618 թվականին:*

*15. Խոսքը Սասանյան Կավատ II (628) արքայի մասին է:*

*16. Վարազտիրոց Բագրատունին Հայոց մարզպան է եղել 628–632 թվականներին:*

*17. Խոսքը Սասանյան արքա Արտաշիր III-ի (628–629) մասին է:*

*18. Վարչականորեն Հայոց մարզպանը պետք է ենթարկվեր Հյուսիսային քուստակի կառավարիչին, որի նստավայրը Ատրպատականի Գանձակ քաղաքն էր: Բայց, ինչպես վկայում է Սեբեոսը, Վարազտիրոցը դուրս էր եկել այդ ենթարկվածությունից:*

*19. **Դարիքպետ** – պալատական արարողապետ:*

*20. Խոսքը Բյուզանդիայի Հերակլ I կայսեր (610–641) մասին է:*

*21. Դավադրությունը կազմակերպվել է 635 թվականին:*

*22. Հերակլ I-ի մահից հետո (641) Վարազտիրոցը վերադարձել է Կոստանդնուպոլիս, իսկ 645 թ. նշանակվել Հայոց իշխան:*

*23. Այս իրադարձությունները տեղի են ունեցել 633 թվականին:*

*24. Այսինքն՝ գավառների:*

*25. Խոսքը նշանավոր Թեոդորոս Ռշտունու մասին է, Հայոց իշխան (639–654):*

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԴԱՎԱՆԱԲԱՆԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԽԹ.*** *Արդ՝ փոքրիշատե պիտի ասեմ Հայոց Ներսես կաթողիկոսի մասին, որը ծնունդով Տայքից էր՝ այն գյուղից, որն Իշխան են կոչում: Մանկությունից մեծացել էր Հունաց աշխարհում և սովորել Հոռոմի լեզուն ու դպրությունը, զինվորականի կարգով զորախմբերի հետ շրջել էր աշխարհում, հաստատապես ընդունել Քաղկեդոնի ժողովն ու Լևոնի տոմարը: Բայց ոչ մեկին իր ամբարիշտ մտադրությունը չէր հայտնել, մինչև հասավ [Տայոց] աշխարհի եպիսկոպոսությանը և այնտեղից հրավիրվեց կաթողիկոսության աթոռին: Վարքով, պահեցողությամբ և աղոթքներով առաքինի այր էր: Բայց իր սրտում թաքցրած պահում էր դառն թույները և խորհում էր թեքել հայերին դեպի Քաղկեդոնի ժողովը: Սակայն չէր համարձակվում այդ մտադրությունը վեր հանել, մինչև Կոստանդին արքան[1] եկավ ու նստեց կաթողիկոսարանում[2], և կիրակի օրը Սուրբ Գրիգոր եկեղեցու մեջ[3] քարոզեց Քաղկեդոնի ժողովը: Հոռոմ երեցի կողմից հոռոմերեն[4] պատարագ մատուցվեց, և հաղորդվեցին թագավորը, կաթողիկոսն ու բոլոր եպիսկոպոսները. որը՝ կամա, որն՝ ակամա: Եվ այսպես կաթողիկոսը սասանեց Սուրբ Գրիգորի ճշմարիտ հավատը, որը բոլոր կաթողիկոսները հաստատուն հիմնադրությամբ պահում էին Սուրբ եկեղեցու մեջ Սուրբ Գրիգորից մինչև այսօր: Պղտորեց սուրբ, վճիտ և ականակիտ աղբյուրների ջրերը, որը վաղուց ի վեր իսկ իր մտքում ուներ կաթողիկոսը, բայց չէր համարձակվում հայտնել մինչև այդ օրը: Ապա [հարմար] ժամանակ գտնելով՝ ի կատար ածեց իր ցանկությունը. եպիսկոպոսներին մեկ առ մեկ պարտադրեց և ահաբեկեց, մինչև որ մահվան երկյուղով բոլորը կատարեցին հաղորդության հրահանգները, մանավանդ որ մեռած էին այն երանելիները, ովքեր ավելի հաստատակամ էին:*

*Միայն ոմն եպիսկոպոս, թագավորի առջև ըմբերանած, պապանձվել էր: Քանզի ավելի առաջ նա [կաթողիկոսը] և բոլոր եպիսկոպոսները թուղթ էին գրել, [որով] նզովում [էին] Քաղկեդոնի ժողովն ու Լևոնի տոմարը, հրաժարվում Հոռոմի հաղորդությունից. և այն կնքեցին կաթողիկոսի, բոլոր եպիսկոպոսների ու իշխանների մատանիներով ու տվեցին նրան [Ներսեսին], որպեսզի պահի եկեղեցում: Իսկ երբ պատարագը մատուցվեց, և բոլոր եպիսկոպոսները հաղորդվեցին, այն եպիսկոպոսը, որի մասին ավելի վերևում ասացի, չհաղորդվեց,*

*այլ գնաց իջավ բեմից և թաքնվեց ամբոխի մեջ։*

*Երբ հաղորդության գործն ավարտեցին, և թագավորը մտավ սենյակ, կաթողիկոսն ու հոռոմ երեցները մոտեցան ու ամբաստանեցին այդ եպիսկոպոսից. «Աթոռին չնստեց և մեզ հետ չհաղորդվեց. անարժան համարեց մեզ և ձեզ, գնաց իջավ բեմից և ծածկվեց ամբոխի մեջ»։ Թագավորը խռովվեց և հրաման տվեց երկու այրերի, որ բռնեն նրան ու բերեն իր սենյակը՝ իր առջև։*

*Խոսեց թագավորը և ասաց. «Քահանա՞ ես»։ Եպիսկոպոսն ասաց. «Եթե Աստված և ձեր փառքը կամենան»։ Թագավորն ասաց. «Ո՞վ ես դու, որ ես, որ քո թագավորն եմ, իսկ դա՝ քո կաթողիկոսն ու մեր հայրը, դու ո՛չ ինձ և ո՛չ էլ դրան քեզ հետ արժանի չես համարում հաղորդության։ Եպիսկոպոսն ասաց. «Ես մեղավոր և անարժան այր եմ. արժանի չեմ ձեզ հետ հաղորդության, բայց եթե Աստված արժանի գտներ, ձեզ հետ [հաղորդվելս] կհամարեի, թե Քրիստոսի հետ նրա սեղանից և նրա ձեռքով պիտի ճաշակեմ»։ Թագավորն ասաց. «Թո՛ղ այդ և ինձ այս ասա՝ դա Հայոց կաթողիկո՞սն է, թե՞ ոչ»։ Եպիսկոպոսն ասաց. «Այնպես, ինչպես Սուրբ Գրիգորը»։ Թագավորն ասաց. «Դրան կաթողիկոս ընդունո՞ւմ ես»։ Ասաց՝ այո։ Թագավորն ասաց. «Դրա հետ հաղորդվո՞ւմ ես»։ Ասաց. «Այնպես, ինչպես Սուրբ Գրիգորի հետ»։ Թագավորն ասաց. «Իսկ այսօր ի՞նչ պատճառով չհաղորդվեցիր»։ Ասաց. «Բարեբա՛ր թագավոր, մինչդեռ մենք ձեզ տեսնում էինք որմնանկարներում, մեզ դող էր բռնում, ուր մնաց թե ահավասիկ դեմ հանդիման տեսնում ենք և դեմ առ դեմ խոսում։ Մենք տգետ և տխմար մարդիկ ենք. ո՛չ լեզու գիտենք և ո՛չ դպրություն։ Բայց եթե նախապես ուսանենք, նաև կհասկանանք։ Իսկ քո բարեբար հրամանները ո՞վ կհամարձակվի չկատարել։ Այս աշխարհի բոլոր կարգի հրամաններն այստեղից և դրա կողմից են ելնում։ Սրանից չորս տարի առաջ[5] դա ժողով արեց, բոլոր եպիսկոպոսներին այստեղ ժողովեց, հավատի մասին թուղթ գրել տվեց, կնքեց նախ իր մատանիով, ապա՝ մեր, և ապա՝ բոլոր իշխանների մատանիներով։ Եվ այդ թուղթն այժմ դրա մոտ է։ Հրամայեցե՛ք պահանջել և ծանոթանալ[6]։ Իսկ նա [Ներսեսը] մնացել էր պապանձված։ Թագավորը, իմանալով նրա նենգությունը, իր[ենց] լեզվով երկար հանդիմանեց նրան։*

*1. Խոսքը Բյուզանդիայի Կոստանդ II կայսեր (641-668) մասին է։*

*2. Կոստանդ II-ը Հայաստան է եկել 653 թվականին՝ պատժելու Թեոդորոս Ռշտունուն։ Հետևաբար, այս իրադարձություններն էլ տեղի են ունեցել նույն՝ 653 թվականին։*

*3. Խոսքը Դվինի Ս. Գրիգոր Լուսավորիչ մայր եկեղեցու մասին է։*

*4. Այսինքն՝ լատիներեն:*

*5. Այսինքն՝ 649 թվականին:*

*6. Որոշ ուսումնասիրողներ գտնում են, որ կայսրի հետ բանավիճող եպիսկոպոսը հենց հեղինակն ինքն է, այսինքն՝ Սեբեոսը:*

## «NARRATIO DE REBUS ARMENIAE» ԵՐԿԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԱՆՋԱՏՄԱՆ ՄԱՍԻՆ

***«Narratio de rebus Armeniae» գրվածքը, որը բառացիորեն թարգմանվում է «Պատմություն Հայոց խնդիրների մասին» ստեղծվել է VI դ. վերջերին – VII դ. սկզբներին: Այն թեև անանուն է, սակայն հստակ է, որ շարադրվել է հայ քաղկեդոնական միջավայրում: Ակնհայտ է նաև, որ գրվածքի հեղինակը հայ է և բյուզանդական եկեղեցիների միության ջատագով: Ուսումնասիրողները նաև պարզել են, որ երկասիրությունը նախապես գրված է եղել հայերեն և, որ «Narratio»-ն մի թարգմանություն է հայերեն բնագրից, իսկ թարգմանության ժամանակը գետեղվում է XI–XII դարերի միջև:***

***«Narratio»-ն ոչ միայն կարևորագույն սկզբնաղբյուր է Հայոց եկեղեցու ու դավանաբանության, այլև IV–VII դարերի հայ ժողովրդի քաղաքական պատմության ուսումնասիրության համար:***

***«Narratio»-ի հունարեն բնագիրն առաջին անգամ լույս է տեսել դեռևս 1648 թվականին՝ Ֆր. Կոմբեֆիսի աշխատասիրությամբ: Հետագայում այն վերահրատարակվել է բազմիցս, լույս է տեսել նաև լատիներեն թարգմանությամբ:***

***Հայերեն թարգմանությունը, որն իրականացրել է Հ. Մ. Բարթիկյանը (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 6, 1962, էջ 457–470) կատարված է Ժ. Գարիտի կազմած գիտական բնագրից (G. Garitte, La Narratio de rebus Armeniae, տե՛ս «Corpus Scriptorum Christianorum Orientalium», vol. 132, tome 4, Louvain, 1952):***

**Պատմություն Սուրբ Գրիգորի օրերից սկսած մինչև այժմ՝ ... գիտենալու համար այն, թե մինչև երբ նրանք պահպանեցին Սուրբ Գրիգորից և Նիկիայի ժողովից ստացած ուղիղ հավատքը, երբ և ում կողմից մոլորվեցին նրանք, ինչ ընթացք ունեցան, և այն մասին, թե ինչպիսի հարցեր ծագեցին հավատի շուրջը, և թե ինչպես նրանք մնացին մոլորության մեջ մինչև այսօր:**

*... Ինչպես վերևում ասացինք, [հայերից շատերը] հրաժարվեցին Սուրբ Գրիգորի ավանդությունից, անջատվելով Կեսարիայի աթոռից և հրաման ստացան պարսից արքայից[1], որ իրենք կատարեն իրենց*

*ձեռնադրությունը: Նրանք ասում էին, թե «Սուրբ Գրիգորից ենք ստացել ձեռնադրությունը և նրա աշակերտներն ենք ի Քրիստոս»:*

*Երբ Ներշապուհ եպիսկոպոսը[2] այդ հայտնեց Ներսես կաթողիկոսին[3], որն Աշտարակից էր և ուրիշ եպիսկոպոսների և ազատների, որոշվեց մեծ ժողով գումարել Դվին քաղաքում[4] նույն այն Ներսես կաթողիկոսի քսաներորդ տարում, Հուստինոս կայսեր[5] ԺԳ (13) տարում և պարսից Խոսրով արքայի ԻԴ (24) տարում, Յիստբուզիտի[6] նահատակության տարում, Հայոց թվականության սկզբում, այն ժամանակ, երբ [հայերը] նզովեցին Քաղկեդոնի Սուրբ ժողովը որպես նեստորական, ըստ Աբդիշոյի[7] գրության, որովհետև այդ [նույն] տարում թարգմանեցին Աբդիշոյի կողմից բերված վերոհիշյալ գրությունները, որոնք գրվել էին Տիմոթեոսի[8] և Ֆիլիքսի[9] կողմից և որոնք ուղղված էին Քաղկեդոնի ժողովի և նրանց դեմ, ովքեր ի վերա Քրիստոսի, մեր Աստուծո խոստովանում էին երկու բնություն: Նրանք ընդունեցին այդ գրվածքները և նույն այն ժողովում, որը կայացավ Դվին քաղաքում, դավանեցին մեկ բնություն Աստուծո բանին և մարմնի, և որ անմահ բնությամբ նա խաչվեց և մահացավ, դրա համար էլ «Սուրբ Աստված»-ին ավելացրին նաև «որ խաչեցար»-ը ըստ Պետրոս Թափիչի[10], որը տառապում էր Սաբելիոսի (ախտով) և նզովքով որոշեցին չհաղորդվել Երուսաղեմի և Նոր Հռոմի հետ և նրանց հետ, ովքեր ի վերա մեր Տիրոջ Հիսուս Քրիստոսի խոստովանում են երկու բնություն: Նրանք Աբդիշոյին եպիսկոպոս ձեռնադրեցին, ինչպես և հակոբիկ Եվտիքեսին[11] և նրանց երկու այլ ընկերներին, որոնցից մեկը հուլիանական էր, իսկ մյուսը՝ այլ աղանդի կողմնակից, որոնց ձեռնադրելով ուղարկեցին Ասորիքի Միջագետք առ հավատ պահելու որոշմամբ միաբանությունը միմյանց հետ, որն ամրապնդեցին ինքնագիր գրությամբ:*

*Երկար ժամանակ անց ոմն Վարդան իշխան[12] սպանեց պարսիկ բռնակալ Սուրենին և ապստամբելով՝ Հայաստանից փախչում է Կոստանդնուպոլիս՝ Խոսրովի Խ [40] տարում, և Սուրբ Սոֆիան կառուցող Հուստինիանոսի Լ [30] տարում: Վարդանը և իր հետևորդները չէին հաղորդվում (հույների հետ) ասելով, որ «մեր վարդապետներից չունենք հրաման հաղորդվելու ձեզ հետ»: Այդ առթիվ կայսրը հրամայեց նույն այս Վարդանին հրավիրել Հայոց եպիսկոպոսներին և վարդապետներին և հարցը ճշգրիտ քննել: Կոստանդնուպոլսում կայացավ մեծ ժողով, որին անվանում են հինգերորդ ժողով, ընդդեմ աղանդավոր ոմանց և միաբանելով, հրավիրեցին Վարդանին և նրա հետևորդներին Սուրբ Սոֆիայի մի դուռը, որը մինչև օրս կոչ-*

*վում է Հայոց Դուռ և այն ժամանակ նզովեցին Օրիգենեսին, Եվագրիոսին, Դիդիմոսին, նեստորականներին, Հակոբիկներին, Հուլիանականներին, գայանոսականներին և ընդհանրապես Եվտիքեսի և Դիոսկորոսի աղանդի կողմնակիցներին: Վերադառնալով Հայաստան, նրանց մի մասը սիրով ընդունեց միությունը, իսկ մյուս մասը Հովհաննես կաթողիկոսի[13] ժամանակ պառակտվեց (իմա հերետիկոսացավ), որի մասին այժմ մասնավորապես խոսելու կարիք չկա: Այսպիսով նրանք նամակ գրեցին Աղվանից աշխարհի կաթողիկոս Աբասին հետևյալ բովանդակությամբ. «Եկ, միաբանիր մեր հավատքին՝ Քրիստոսի Աստուծո մի բնություն ընդունելուն և երեքսրբյան հիմնին ավելացրու «որ խաչեցար»-ը, իսկ նա չէր համաձայնվում:*

*Նույնպես և Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսին[14], սակայն նա ևս չէր համաձայնվում, ասելով որ «ինձանից առաջ եղած երանելագույն եպիսկոպոսներ Պետրոսն ու Գրիգորն այդպես էին ասում «սուրբ Աստված»-ը, իսկ ես ոչ կավելացնեմ, ոչ էլ կպակասեցնեմ»[15]:*

*Նրանք նույնպես գրեցին վրացիներին, որոնք խիստ պատասխան տալով չուզեցին հնազանդվել նրանց, այլև խայտառակ կերպով իրենց ուղարկված մարդկանց, որպես հերետիկոսների աշակերտների և հրեաների ասույթները վերականգնողների, վռնդեցին: Ոչ ոք չենթարկվեց նրանց կամքին, բացի հայերենախոս Տաշիր, Զորափոր և Գարդման կոչված գավառներից, ոմանք էլ Արցախից: Այդ ժամանակ մեծ խռովություններ էին տեղի ունենում իշխանների ապստամբության կապակցությամբ և՛ Հռոմում, և՛ Պարսկաստանում և քսան տարի վիճում էին հավատքի շուրջը (ինչպես որ ասում է Օվսիեն. «Պատերազմ եկն ի վերայ որդւոցն անօրէնութեանց խրատել զնոսա և ժողովեսցին ի վերայ նոցա ազգք խրատել զնոսա ի վերայ երկուց անիրաւութեանց նոցա»)[16], Հովհաննես և Մովսես[17] կաթողիկոսների օրերում, մինչև Խոսրով արքայի[18] առաջին տարին, որը գահ բարձրացավ Մավրիկիոս կայսեր[19] օգնությամբ, հռոմայեցիների մեծ հզորության ժամանակ:*

*Զորավար Մուշեղ Մամիկոնյանը, Տարոնեցի վերանվանյալը, գնալով Պարսկաստան և հաղթանակ տանելով հաստատեց Խոսրովին գահի վրա:*

*Նա թագավորեց ԼԷ [37] տարի. սա ամբողջ Հայաստանը մինչև Դվին տվեց Մավրիկիոս կայսեր, որի համար նրա կողմից արքա դարձավ: Նա (Մուշեղը), ինչպես և նրա զորքը, նրա կողմից բազմաթիվ մեծարժեք նվերներ ստացան: Նույն տարին պարսից արքա Խոսրովը Մուշեղին ուղարկեց Մավրիկիոսի մոտ: Նա ժամանելով Կոստանդնուպոլիս, պատվական խաչի մեծ տոնի օրը, իր ուղեկիցների հետ*

*հրաժարվեց հաղորդությունից: Կայսրը հարցրեց և իմացավ պատճառը: Մուշեղն ասում էր, որ (չի հաղորդվում) «Քաղկեդոնի ժողովի պատճառով և որովհետև դուք ի վերա մեր տեր Հիսուս Քրիստոսի խոստովանում եք երկու բնություն»: Կայսրն ասաց. «Ձեր նախորդ Վարդանը, նրա ազատները և նրանց վարդապետները գրավոր համաձայնություն տվեցին խոստովանել երկու բնություն»: Մուշեղը պատասխանում է. «Նրանք այդ արեցին կամ անգիտության և կամ էլ վախի պատճառով: Սակայն եթե դու ցանկանաս հանդիստ լսել և սխալն արագորեն ուղղել, ապա դու ճշմարտությունը կգտնես իմ վարդապետների մոտ»: Կայսրը նամակներով հրաման ուղարկեց, որպեսզի հայոց բոլոր եպիսկոպոսները և Մովսես կաթողիկոսն իր դպիրների հետ միասին ներկայանան Կոստանդնուպոլիս: Իսկ Մովսես կաթողիկոսն ուշադրություն չդարձրեց հրամանին ասելով. «Ես չեմ անցնի Ազատ գետը, չեմ ուտի փռան հացը և չեմ խմի ջրախառն տաք գինի»: Վասպուրական աշխարհի եպիսկոպոսները և նրանք, ովքեր գտնվում էին պարսից տիրապետության տակ նմանապես չցանկացան գնալ: Իսկ Տարոնի եպիսկոպոսները և ովքեր որ գտնվում էին հոռոմայեցիների տիրապետության տակ գնացին Կոստանդնուպոլիս: Երկար զննելուց հետո, նրանք հոռոմներից համոզվեցին և ստորագրեցին ու երդմամբ համամիտ դարձան նրանց: Երբ նրանք վերադարձան Հայաստան, Մովսեսը նրանց չընդունեց նույնպես և Պարսկահայաստանի մյուս եպիսկոպոսները: Նրանք իրենց կաթողիկոս ձեռնադրեցին Հովհաննեսին՝ Կոգովիտի Բագարան գյուղից: ԺԴ [14] տարի, մինչև Մավրիկիոս կայսեր վախճանը, նրանց միջև հարաբերությունները սրված էին՝ Քրիստոսի երկու բնությունների և Քաղկեդոնի ժողովի հարցում:*

*Նրա վախճանից հետո պարսից Խոսրով արքան գրավեց Հայոց աշխարհը: Դա այն ժամանակ էր, երբ հերետիկոս Աբրահամը կաթողիկոս[20] դարձավ: Այդ նույն տարին նա ստիպեց եպիսկոպոսներին, երեցներին և վանահայրերին նզովել Քաղկեդոնի ժողովը, հակառակ դեպքում հեռանալ երկրից: Նրանք նզովեցին և վեճը դադարեց:*

*Երեք տարի անց պատերազմ տեղի ունեցավ Բասենում և պարսիկները պարտության մատնեցին հոռոմայեցիներին, պաշարվեց Կիթառիճ քաղաքը և Թեոդոսուպոլիսը՝ Փոկաս կայսեր Ե [5] տարին և Խոսրովի Ի [20] տարին: Նրանք գրավեցին բազմաթիվ այլ քաղաքներ, (գերեցին) նաև Հովհաննես կաթողիկոսին, որը թեպետ Հայաստանում էր գտնվում, բայց ենթարկվում էր հոռոմայեցիներին: Այն ժամանակ էր, որ հերետիկոս Աբրահամ կաթողիկոսը ստիպեց Հովհաննեսի բաժնի եպիսկոպոսներին նզովել Քաղկեդոնի ժողովը, հակառակ*

*դեպքում հեռանալ Հայաստանի շրջաններից: Վերջիններս չհամաձայնվեցին և նրանցից ոմանք անցան Տայք, ոմանք Հոռոմոց երկիրը և վախճանվեցին օտարության մեջ:*

*Ապա (աթոռ նստավ) հերետիկոս Կոմիտաս կաթողիկոսը[21], որի ժամանակ բազում խռովություն և ավերածություններ տեղի ունեցան Հոռոմոց աշխարհում Խոսրովի ձեռքով: Նա (Կոմիտասը) բոլորից սուր կերպով գրգռեց վեճը՝ նզովելու համար Քաղկեդոնի ժողովը: Նա բազմաթիվ ճառեր գրեց իր սեփական անվամբ, կանոններ և տիպեր՝ Սուրբ Սահակի անվամբ, որոնց թվում և հայերեն լեզվով Ավարտակամ կոչված գիրքը[22]: Նա ուզում էր, որ իր աթոռը ժառանգի ոմն Հովհաննես[23], բայց դա չեղավ, և այն ժառանգեց Քրիստափորը[24]:*

*Երբ Քրիստափորը զրկվեց աթոռից, Հովհաննեսն ուրախացավ, բայց այդ ժամանակ ևս նրան ոչինչ չհաջողվեց անել: Որովհետև կաթողիկոս դարձավ Եզրը[25]: Հովհաննեսը մոլեգնեց և չար աչքով էր նրան նայում նրա (կաթողիկոսության) ժամանակ:*

*Խոսրովի մահվան Դ [4] տարին և Հերակլի[26] թագավորության ԻԳ [23] տարին (Հերակլը) գալով Մեծ Հայք հրամայեց Թեոդոսուպոլսում մեծ ժողով գումարել՝ բոլոր եպիսկոպոսների և վարդապետների, կաթողիկոս Եզրի և բոլոր ազատների մասնակցությամբ, քննելու և եզրակացության հանգելու համար Քրիստոսի՝ մեր Աստուծո երկու բնությունների և Քաղկեդոնի ժողովի հարցի շուրջը: Երեսուն օր նրանք քննեցին այդ հարցը և հայերը համոզվեցին (սուրբ հայրերի) գրքերից և իրենց ձեռքով ստորագրեցին ու երդվեցին այլևս այդ մասին երբեք չհակաճառել:*

*Վերադառնալով Դվին, նույն այն Հովհաննեսը դրդեց իր կրոնակիցներին, Գարդմանի եպիսկոպոս Ստեփանոսին և Սյունյաց Մաթուսաղային[27] և մի քանի ուրիշների, որոնք չէին գնացել ժողովի, չհաղորդվել ո՛չ կաթողիկոս Եզրի, և ո՛չ էլ նրա համախոհների հետ: Մի քանի օր անց վերոհիշյալ Ստեփանոսը եկավ Եզր կաթողիկոսի մոտ:*

*Հովհաննեսն իմանալով, որ (Ստեփանոսը) անցել է նրա (Եզրի) կողմը, մեծ զայրույթով թշնամացավ Ստեփանոսի դեմ, նույնպես և Մաթուսաղայի դեմ, որովհետև նա ևս անցավ Եզրի կողմը: Հովհաննեսն ասում էր, որ «Ձեր մեղքերի հետ համեմատած Եզրի մեղքն ավելի թեթև է, որովհետև նա կայսեր երկյուղից էր, որ չեղվեց ճշմարիտ ճանապարհից, իսկ դուք սնափառությամբ և կաշառքով է որ անբուժելի մեղքի մեջ ընկաք»:*

*Եզրը դիմեց նույն Հովհաննեսին ասելով. «Երիցս հրավիրեցի քեզ էլ, Մաթուսաղային էլ, Ստեփանոսին էլ, ասելով, որ «մեր երկրի վար-*

*դապետներն ու դպիրները դուք եք. թող գայիք և պատասխան տայիք կայսեր, չէ՞ որ նա բոլորին էլ հրավիրել էր: Դուք արհամարհեցիք ու չեկաք, և այժմ մեղադրում եք մեզ, որպես նրան համամիտ դարձած: Մենք ինչ որ նրանցից լսեցինք ճշմարիտ համարեցինք և խոստովանեցինք մեր Տիրոջ Հիսուս Քրիստոսի երկու բնությունը՝ կատարյալ Աստված և կատարյալ Մարդ, մեկ անձնավորություն և մեկ դեմք և անբաժան տնօրինության մեջ: Եվ սուրբ հայրերի գրվածքները, որոնք մենք ընթերցեցինք, և մեր (գրվածքները) նույնի մասին վկայեցին և մենք համոզվեցինք նրանց ասածներին, որոնք համաձայն են սուրբ գրոց: Այժմ դեռ շատ ժամանակ չի անցել և սուրբ հայրերի բոլոր գրվածքները մեզ մոտ են, ստուգեցեք և իմացեք ճշմարտությունը»: Եվ երբ նա ցույց տվեց (սուրբ) գրոց վկայությունը, հակառակորդ Հովհաննեսն ասաց. «Այդ բոլորը սուրբ հայրերի գրոց մեջ նեստորականներն ավելացրին ինչպես ժամանակին Սատորնիլոսը[28] սուրբ գրոց մեջ բազմաթիվ հերետիկոսական (մտքեր) էր ավելացնում, ինչպես օրինակի համար, ըստ Ղուկասի Ավետարանին, որ «Սկսաւ Յիսուս տրտմել եւ հոգալ. եւ երեւեցաւ նմա հրեշտակ յերկնից եւ զօրացուցանէր զնա» և «եւ մտադիւրութեամբ եւս կայր յաղօթս: Եւ հոսէին ի նմանէ քրտունք իբրեւ զկայլակս արեան» և նմանները[29]: Հովհաննեսի այս խոսքերը Եզրին էլ, նրա կողմնակից եպիսկոպոսներին էլ հակառակ թվացին և բոլորը հեռացան նրանից այդ խոսքերից զզված:*

*Իսկ նա չարունակում էր վիճել: Դրա համար էլ նա ստացավ հակառակորդ անունը: Որովհետև խոսքի զորությունը բարի մարդկանց համար դառնում է առաքինության զենք, իսկ չար մարդկանց համար՝ չարության փուշ:*

*Եզրի մահից հետո, նա կարծում էր, թե ինքն իշխանների օգնությամբ կստանա աթոռը: Բայց երբ աթոռն ստացավ Ներսեսը[30], նա առավել ևս հուզվեց, որովհետև տեսնում էր, որ նա համահաղորդակից էր հոռոմայեցիների կայսեր: Նա բոլորին մղում էր հակաճառության, ասելով, որ նա ևս Եզրի պես մոլորվեց: Ներսեսը բացահայտ հրավիրեց նրան և բազմաթիվ եպիսկոպոսների, վարդապետների և ազատների ներկայությամբ մանրամասն քննության ենթարկեց հակաճառությունը: Նրան աքսորի դատապարտեցին և նա կաթողիկոսի ու Հայոց իշխանի[31] կողմից աքսորվեց: Նրա ու նրա ընկերների ճակատին չիկացած երկաթով աղվեսադրոշմ խարանեցին, իսկ նրան արտաքսեցին Կովկաս լեռը:*

*Այնտեղից նա վերադարձավ, որովհետև չընդունվեց տեղի կռապաշտների կողմից և Անաստաս (կաթողիկոսի)[32] մահից հետո եկավ*

*Հայաստան իր ծննդավայրը ու վախճանվեց խոր ծերության մեջ: Նրա աշակերտները բազմանալով բոլորին շեղեցին ճշմարտության ուղուց և նրանց հերձվածն այդ երկրում տարածվեց մինչև Հուստինոս կայսեր (ժամանակ)[33]:*

*Նա իր (թագավորության) Ե տարին կաթողիկոս Սահակին[34] և նրա եպիսկոպոսներին Կոստանդնուպոլիս հրավիրելով, միացրեց նրանց մեր տիրոջ և Աստուծո երկու բնություն՝ աստվածային և մարդկային, մեկ անձնավորությամբ անշփոթ և անբաժանելի ընդունողների հետ և նրանք գրավոր երդում տվեցին այլևս չհակառակվել: Նրանք երբ վերադարձան, Հայաստանում մնացածները խորշում էին նրանց վերակացությունից, որպես հոռոմներին հարած և հակառակվում ու վիճում էին Սահակի և նրա հետ գնացողների հետ, ասելով որ «եթե դարձի չգաք և չնզովեք նրանց, չենք ընդունի ձեզ մեր երկրում»: Իսկ նրանք սիրելով մարդկային փառքը և ոչ Աստուծո[35], նորից նզովեցին նախ իրենց, որպես հոռոմների հետ հաղորդված, ապա հոռոմներին և այդպիսով ցույց տվեցին, որ նրանք անբուժելի են իրենց չարության մեջ: Այսպիսիների մասին է, որ Պետրոս առաքյալն ասել է. «Զի եթէ փախուցեալք ի պղծութեանց աշխարհի՝ գիտութեամբ Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի, և դարձեալ ընդ նոյնս շեղեալք պատիցին, եղեւ նոցա վախճանն չար քան զառաջինն: Զի լաւ էր նոցա եթէ բնաւ իսկ չէր ծանուցեալ զարդարութեանն ճանապարհ, քանզի ծանեան և յետս կացին ի սուրբ պատուիրանէն, որ նոցա աւանդեցաւ: Եկեալ ի դէպ նոցա ճշմարիտ առակին զգօնութեան, եթէ շուն դառնայ անդրէն ի փսխած իւր, եւ խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ»[36]:*

*1. Խոսքը պարսից արքա Կավատի (488-496, 498-531) մասին է:*

*2. Ակնարկը վերաբերում է Տարոնի և Մամիկոնեից եպիսկոպոս Մերշապուհին (Ներշապուհ):*

*3. Հայոց կաթողիկոս (548-557) Ներսես Բ Բագրևանդցին է:*

*4. Դվինի եկեղեցական ժողովը տեղի է ունեցել 554 թվականին:*

*5. Թյուրիմացություն է՝ խոսքը Հուստինիանոս I կայսեր (527-565) մասին է:*

*6. Յիսոբուզիտը պարսիկ էր, որը հրաժարվելով կրակապաշտությունից ընդունել էր քրիստոնեություն: Մահապատժի է ենթարկվել 553 թ. նոյեմբերի 9-ին:*

*7. Ասորաց եպիսկոպոս Աբդիշոն կարևորագույն դերակատարություն է ունեցել հայ-ասորական եկեղեցական հարաբերություններում, եղել է Դվինի 554 թ. եկեղեցական ժողովի նախաձեռնողներից:*

*8. **Տիմոթեոս** – Տիմոթեոս Կուզ (Էլուրոս), հույն նշանավոր հակաքաղկեդոնիկ աստվածաբան (IV դ. վերջ – 447), Ալեքսանդրիայի պատրիարք:*

*9. **Ֆելիքս** – Նաբովք քաղաքի Ֆիլոքսենոս եպիսկոպոս:*

*10. **Պետրոս Թափիչ** – խոսքը «Գայլ» կոչեցյալ Անտիոքի պատրիարք (471,*

*475-478, 485-488) Պետրոս Անտիոքացու մասին է։։*

*11. Եվտիքեսը (378-454) Կ. Պոլսի վանքերից մեկի միաբան է, հերձվածողական Եվտիքեսական վարդապետության հիմնադիր։*

*12. Խոսքը 571-572 թթ. ապստամբության առաջնորդ Վարդան Կրտսեր Մամիկոնյանի մասին է։*

*13. Հովհաննես Բ Գաբեղենացի (557-574)։*

*14. **Վրթանես եպիսկոպոս** - խոսքը VI դ. վերջի – VII դ. սկզբի հայ նշանավոր մատենագիր, դավանաբան Վրթանես Սյունյաց եպիսկոպոսի մասին է, եղել է կաթողիկոսական տեղապահ։*

*15. Պետրոս Քերթող Սյունեցին և Գրիգոր Սյունեցին եղել են Վրթանես Սյունեցու նախորդները։*

*16. Տե՛ս **Օվսիէ**, Ժ, 9-10։*

*17. Մովսես Բ Եղիվարդեցի (574-604) կաթողիկոսն է։*

*18. **Խոսրով արքա** – պարսից Խոսրով II Փարվեզ (590-628) արքայից արքա։*

*19. Բյուզանդիայի կայսր Մավրիկիոս (582-602)։*

*20. Հայոց կաթողիկոս Աբրահամ Ա Աղբաթանեցի (607-610)։*

*21. Հայոց կաթողիկոս Կոմիտաս Ա Աղցեցի (610-628)։*

*22. Խոսքը «Հավատարմատ» գրքի մասին է։*

*23. Խոսքը Հովհան Մայրավանեցու (Մայրագոմեցի) մասին է։*

*24. Հայոց կաթողիկոս Քրիստափոր Բ Ապահունի (628-630)։*

*25. Հայոց կաթողիկոս Եզր Ա Փառաժնակերտցի (630-640)։*

*26. Բյուզանդիայի Հերակլ կայսրը (610-641)։*

*27. Սա «մեծ քերթողն և անյաղթ փիլիսոփայն» հորջորջված Սյունյաց եպիսկոպոս Մաթուսաղան է։*

*28. Սատորնիլոսը եղել է գնոստիկյան աղանդի պարագլուխ։*

*29. **Մատթէոս**, ԻԶ, 37; **Ղուկաս**, ԻԲ, 43-44։*

*30. Հայոց կաթողիկոս Ներսես Գ Տայեցի (642-662)։*

*31. Խոսքը Հայոց իշխան Թեոդորոս Ռշտունու մասին է։*

*32. Հայոց կաթողիկոս Անաստաս Ա Ակոռեցի (661-667)։*

*33. Նկատի ունի Հուստինիանոս II կայսրին։*

*34. Հայոց կաթողիկոս Սահակ Գ Ձորոփորեցի (677-703)։*

*35. Տե՛ս **Հովհաննու**, ԺԲ, 43։*

*36. Տե՛ս **Բ Թուղթ Պետրոսի**, Բ 20-22։*

## ՈՒԽՏԱՆԵՍԸ ՀԱՅԵՐԻ ԵՎ ՎՐԱՑԻՆԵՐԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԲԱԺԱՆՄԱՆ ՄԱՍԻՆ

***Ուխտանեսը X դարի հայ նշանավոր պատմագիրներից է։ Ծնվել է մոտ 935 թվականին։ Նախնական կրթությունն ստացել է Նարեկավանքում։ Աշակերտել է Անանիա Նարեկացուն, հմտացել աստվածաբանության բնագավառում։ Եղել է Սեբաստիայի (970-985) և Եդեսիայի (Ուռհա) թեմակալ առաջնորդ, պայքարել քաղկեդոնականու-***

*թյան դեմ։ 980 թվականին Անանիա Նարեկացու հանձնարարությամբ սկսել է շարադրել «Պատմութիւն Հայոց» երկասիրությունը, որն ավարտել է 982 թվականին։ Աշխատանքը բաղկացած է եղել երեք մասից, որոնցից մեզ են հասել առաջին և երկրորդ մասերը։ Առաջին բաժինն ընդգրկում է մարդկության առաջացման աստվածաշնչյան պատմություններից մինչև Տրդատ III Մեծի գահակալման ու Հայաստանում քրիստոնեության տարածման իրադարձությունների համառոտ նկարագրությունը։ Երկրորդ բաժինը, որ վերնագրված է «Պատմութիւն բաժանման վրաց ի հայոց» (70 գլուխ), մանրամասն նկարագրում է VI դ. վերջին և VII դ. սկզբին հայկական և վրացական եկեղեցիների փոխհարաբերությունների ու հատկապես Հայոց եկեղեցուց վրաց եկեղեցու բաժանման պատմությունը։ Երկասիրության այս բաժինը եզակի և ճշմարտապատում սկզբնաղբյուր է նշված խնդիրների և ընդհանրապես հայ, վրացի և աղվան ժողովուրդների պատմության ուսումնասիրության համար։ Դրանով պետք է բացատրել այն բուռն հետաքրքրությունը, որ նկատելի է Ուխտանեսի պատմության նկատմամբ, այն թարգմանվել է ֆրանսերեն, անգլերեն, ռուսերեն, վրացերեն։*

*Ուխտանեսի Պատմության բնագրի լավագույն հրատարակությունն իրականացվել է 2010 թ. Բեյրութում՝ «Հայ մատենագիրներ» մատենաշարով։ Ստորև բերվող հատվածները տրվում են ըստ Վ. Դ. Առաքելյանի աշխարհաբար թարգմանության (Երևան, 2006)։*

## ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Հատված Բ*

### *ՀԱՅԵՐԻՑ ՎՐԱՑԻՆԵՐԻ ԲԱԺԱՆՄԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

*Գլ. Ա. Հոռոմայեցիների վրա Մորիկի թագավորության և պարսից բռնակալության ժամանակներում՝ Ապրվեզ Խոսրով արքայից արքայի տասնյոթերորդ տարում և Մեծ Հայքում Վրկանի մարզպան տեր Սմբատի տերության օրոք[1] Հայոց հայրապետական աթոռին բարձրացավ Աբրահամը Ռշտունյաց գավառից, որը քսանվեցերորդն էր Սուրբ Գրիգորից հետո։ Սա աթոռակալեց քսաներեք տարի[2]։ Սրա ժամանակ տեղի ունեցավ վրաց բաժանումը հայոց միաբանությունից վրաց առաջնորդ Կյուրոնի ձեռքով։ Եվ [վրացիները] հաճեցին կցորդակից դառնալ Քաղկեդոնի չար աղանդին՝ փոխելով սուրբ հայրերի օրենքները և մոռանալով աստվածային ուխտը։*

Իսկ Կյուրոնը ձեռնադրություն էր ստացել Հայոց կաթողիկոս Մովսեսից, որի մահից հետո աթոռը գրավեց Աբրահամը: Իսկ Կյուրոնի մասին, թե որտեղի՞ց էր, կամ ո՞ր գավառից ու գյուղից, և կամ ի՞նչ ձևով եկավ Հայաստան՝ մի փոքր կպատմեմ պատճառը: Սա աշխարհով ու ազգությամբ վրացի էր՝ Ջավախք գավառի Սկուտրի կոչված գյուղից, և ուներ վրացերեն ու հայերեն կրթություն: Եվ գնալով հռոմեացիների երկիրը՝ այնտեղ տասնհինգ տարի բնակվեց Կողոնիա կոչված գավառում:

Եվ այնտեղ ապրեց մի մեծ գյուղաքաղաքում, որ կոչվում է Նիկոպոլիս՝ Գայլ կոչվող գետի ափին: Եվ սովորեց ու վարժվեց նրանց գրվածքներին և մնացյալ չարարվեստ գիտությանը, որով [էլ] մեզնից բաժանվեց: Եվ այնտեղից վերադառնալով՝ եկավ Հայաստան՝ Հայոց Մովսես կաթուղիկոսի մոտ: Եվ բնակվեց նրա մոտ՝ Սուրբ Կաթողիկեում, որը Դվին քաղաքում էր, քանի որ այն ժամանակ այնտեղ էր Հայոց հայրապետության աթոռը: Եվ նա [Մովսեսը] նրան նշանակեց Սուրբ Կաթուղիկեի վանաց երեց, նաև [դարձրեց] քորեպիսկոպոս՝ նրան վիճակաթեմ տալով [ամբողջ] Արարատյան գավառը: Եվ [Կյուրոնն] այնտեղ մնաց հինգ տարի:

Ապա այդ ժամանակներում վախճանվեց վրաց կաթողիկոսը, և երկրի իշխաններն ու նախարարները Մովսես կաթողիկոսի մոտ մարդիկ ուղարկեցին՝ եպիսկոպոսներով հանդերձ՝ խնդրելու իրենց համար առաջնորդ: Իսկ նա մտածեց, որ իր տանից տա նրանց առաջնորդ՝ երկու կողմերի հավատը միաբան ու հավատարիմ [պահպանելու] համար, միաժամանակ նաև հաստատելու համար նախորդ հայրերի ուխտը, որոնք եղել էին իրենից առաջ: [Ուստի] ձեռնադրեց Կյուրոնին, ինչպես սկզբում ասացինք՝ համարելով նրան յուրային, կարծելով՝ թե նա իբր վստահելի ու աներկմիտ է եղել իր նստավայրում, անգիտանալով նրա սրտում ծածուկ [պահվածը]: [Եվ] ուղարկեց նրան՝ ուղեկցությամբ Պետրոս եպիսկոպոսի, որը Վրաց երկրից էր, և այլ նախարարների, որոնք մեծ պատվով եկել էին նրա [Պետրոսի] հետ:

Իսկ երբ Կյուրոսը հասավ իր իշխանության վիճակը և իրենց քաղաքը, որ կոչվում է Մցխեթա, իր մոտ հավաքեց եպիսկոպոսներին՝ երկրի լավագույն [հոգևոր] այրերի հետ միասին, նաև՝ իշխաններին ու նախարարներին, և նրանց միջոցով ամբողջ երկիրն առհասարակ գցեց իր իշխանության տակ: Ապա երբ տեսավ, [որ] ամեն բան հաջողվեց իր կամքին համապատասխան, այնուհետև մտքին նենգ խնդիր դրեց և եպիսկոպոս ձեռնադրեց մի խուժիկ[3] նեստորականի,

*որի անունը Կիս էր, որ խստություն է [նշանակում]: Քանզի խսկապես էլ խիստ էր և խստությամբ ու չորությամբ վարվեց Տիրոջ կողմնակիցների նկատմամբ, ցասումով բարկացրեց Տիրոջը: Սա [Կիսը] նրա մոտ եկավ Հոռոմների Կողոնիա գավառից, [որտեղ] բնակվում էր Ջուտարիմա կոչվող գյուղում, Նիկոպոլիսի մերձակայքում, և [այս] երկուսն էլ Գայլ գետի ափին են, ինչպես որ նախորդ տեղում ասվեց: Եվ կարծում եմ, որ [Կյուրոնը և Կիսը] ոչ միայն գավառակից էին իրար կամ գյուղակից, այլև աղանդակից և ուսումնակից էին չար վարդապետներից [սովորած] չար ուսմունքով:*

*Եվ [Կյուրոնը] ձեռնադրեց նրան օտարատեսուչ, այսինքն՝ աղանդավոր եպիսկոպոս: Եվ այդպես Կյուրոնը լծակից լինելով Քաղկեդոնի ժողովի անհավատությանը, ինքն իր մեջ ծածուկ հավանությամբ պահելով նրանց դավանանքը, վաղուց ներկված երկաբնակների գույնով, թեպետ և խուժիկից դարձյալ նորոգվեց՝ արդ՝ այդ խուժիկին ձեռնադրեց եպիսկոպոս, ինչպես ասացինք, որից Մովսես Հայոց կաթողիկոսն անտեղյակ էր, մինչև որ բացահայտվեց նրանց նենգ մտադրությունը, որը վաղուց ի վեր ծածուկ պահված էր:*

*Իսկ երանելի հայրապետ Մովսեսը նմանվելով մեծ նախամարգարե Մովսեսին՝ քաղցր [էր] ու հեզ ամենքի հանդեպ: Սա Արագածոտն գավառի Եղիվարդ գյուղից էր: Սա իր հայրապետության աթոռին մնաց երեսուն տարի: Սրա աթոռակալության տասներորդ տարում իր իսկ հրամանով սահմանվեց Հայոց Թորգոմյան թվականությունը և հայ ամիսների տոմարի պատճենը[4]: Սրա քսանհինգերորդ տարում Կյուրոնն աթոռակալեց Վրաց աշխարհի կաթողիկոսությունում: Եվ սավուղաբար[5] երկու տարի միայն ճշմարտությանը հնազանդվեց: Ապա դրանից հետո սկսեց ամբարշտանալ ու ատել ճշմարտությանը և իր հայրապետության երրորդ տարում ձեռնադրեց խուժիկին:*

*Ապա այս բանն իմացավ Մովսեսը, որը Ցուրտավի եպիսկոպոսն էր և նա բանավոր և ապա նամակի միջոցով տեղեկացնում է Մովսես հայրապետին Կյուրոնի կողմից կատարվածների մասին՝ խուժիկ եպիսկոպոսի վերաբերյալ և մնացյալ գործերի, որ նա արել էր, [և] որոնց [Մովսես Ցուրտավեցին] տեսնելով կամ իմանալով [ուրիշներից]՝ ստույգ վերահասու էր եղել: Նաև՝ թե նա քաղկեդոնական դավանանքն ունի՝ իրեն կեղծավորությամբ վարագուրելով, ինչպես որ հենց ինքն է պատմում իր նամակներում:*

*Արդ՝ այս երանելի եպիսկոպոսը, որի մասին ասացինք, թե ճշմարտաբար և բարեփառ կերպով էր իրեն պահում՝ իբրև խաղաղության*

*միջնորդ երկու կողմերի՝ հայերի ու վրացիների միջև: [Իրոք], ասես թե՝ երկուսի միջև խաղաղության և հավատի հաստատության միջնորդ լիներ, ինչպես պատմվում է «Գիրք Թղթոց»-ում: Քանզի [հենց] խաղաղության էլ միջնորդ էր և ուներ հայերեն ու վրացերեն կրթություն: Քանի որ իր մանկության հասակում գնացել էր Ցուրտավ գյուղաքաղաքը և այնտեղ դաստիարակվել էր ու սովորել և՛ մեր, և՛ վրաց դպրությունները՝ աշակերտելով այն աթոռը տիրակալող երանելի եպիսկոպոսներին, որոնք նրանից առաջ էին: Ապա իրեն ևս չնորհվեց Տիրոջից՝ երեսուն տարեկանում հաջորդելու այդ աթոռին:*

*Եվ այս [ամենը] Հայոց անիշխանության ժամանակ էր, քանզի վերացած էր Արշակունյաց ազգի թագավորությունը, և մեր երկիրը երկու մասի էին բաժանել պարսիկներն ու հռոմեացիները:*

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ԷՐ ԿՅՈՒՐՈՆԸ ԿԵՂԾԱՎՈՐՈՒԹՅԱՄԲ ԵՐԿՈՒ ԿՈՂՄԻ ՎՐԱ ՀԱԿՎԱԾ

***Գլ. ԾԷ.*** *Այս առաջիկա դրվագում [գլխում] մենք պետք է պատմենք, թե ինչպես Կյուրոնը կեղծավորաբար երկու՝ պարսից ու հռոմեացիների կողմն էր հակված, և այն էլ՝ լի նենգությամբ ու կեղծավորությամբ: Որովհետև, երբ կամեցավ իր խորամանկությամբ իր չար չինության խարխուլ հիմքը դնել և սկսեց ձեռնադրել այն խուժիկ նեստորականին, որը նրա ձեռակերտ կորստյան սկիզբը դարձավ, դնելով նրա վրա իր աջը՝ մեղքերի աջը, նրան դարձրեց իր մահվան մահիճը, նրանով հիվանդացավ հոգու հիվանդությամբ, որով և մեռավ նրա մեջ ու մեռցրեց Վրաց ողջ երկիրը նույն հիվանդությամբ:*

*Արդ՝ Կյուրոնն իր միտքը երկուսի բաժանելով՝ անցնում է հռոմների կողմը՝ փառավորելով ու հաճոյանալով Մորիկ կայսեր, և նրանով պարծենում է՝ ասելով. «Մենք,— ասում է,— կայսեր հավատն ընդունեցինք և պահում ենք»: Եվ չէր իմանում այն մարդադավանը, թե պետք է «Աստծով պարծենալ հանապազոր», և՝ «Ով պարծենում է, թող Տիրոջով պարծենա»[6]: Եվ դարձյալ ասում էր. «Կոստանդնուպոլիսը Սուրբ Հովհաննեսի աթոռն է և կայսեր տունը, և այն հավատը, որ այնտեղ քարոզվում է, մենք այն ենք պաշտում»: Եվ դարձյալ, թե՝ «Թարգմանել ու բերել տվեցի չորս ժողովների գրությունները, որով հռոոմներն են առաջնորդվում, և մենք այն հավատն ենք պահում, և Աստված թող կայսերն ապրեցնի»:*

*Իսկ ապա թեքվում էր դեպի այս՝ պարսից կողմը, որովհետև նրանց երկիրն էլ երկատված էր՝ պարսից կողմը և հռոմների: Իսկ*

*նա արքայից արքայի համար կասկածի մեջ էր ընկել, թե մի՛գուցե Վրկանի մարզպան Սմբատի սադրանքով քննության առնի իր արարքները: Որովհետև Մովսեսին գրած նրա [Սմբատի] խոսքը բացահայտում է այս մտադրությունը, քանզի՝ «[Ավելի] վաղ ասացի [քեզ], ասում է, թե կգրեմ արքայից արքային, որ իր բարերարությամբ հրաման տա քեզ, որպեսզի գնաս նստես քո եկեղեցում, [իսկ] դու հանձն չառար»: Արդ՝ այսպիսի պատճառով կասկածի մեջ էր Կյուրոնը, այն կողմով պարծենում էր, որովհետև նրանց հավատն էր ընդունել, և այս կողմից էլ վախենում էր, թե արքան հավատի քննություն կկատարի հայ ազնվականների դրդումով: Եվ ասում էր՝ «Աստված թող փառավորի արքային»:*

*Եվ այսպես երկու ոտքով կաղալով՝ միտում էր [մեկ] այս կողմ, [մեկ] այն կողմ, և [այսպես] կոծելով դեգերում էր ծովով ու ցամաքով[7] իր շուրջ հավաքելով Քաղկեդոնի պիղծ ժողովի ու Լևոնի տոմարի դավանողներին, էլ առավել հրեական հին հայհոյությունն էր իր մեջ թարմացնում, և ըստ դրա ապավինելով մարդկանց՝ պարծենում էր, քսու խոսքերով ու աղերսանքով կյանք էր խնդրում կայսեր համար և [միաժամանակ] սնոտի մտքով փառք հայցում արքային:*

## ԱՌԱՋԻՆ ՊԱՏՃԱՌԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ, ՈՐ ՎԵՐԱԲԵՐՈՒՄ Է ԿՅՈՒՐՈՆԻ [ՁԵՌՔՈՎ] ՎՐԱՑ ԲԱԺԱՆՄԱՆԸ

***Գլ. ԿԲ.*** *Այժմ քեզ գրում եմ՝ ինչին որ մենք ենք վերահասու եղել վրաց բաժանման առաջին պատճառի մասին, որովհետև «Գիրք թղթոց»-ում չգտանք այլ պատճառի [մասին] գրված, բացի միայն այն նեստորական խուժիկից, որի մասին Կյուրոնին գրեց երանելի հայրապետ Մովսեսը, որ մինչև այժմ հիշվում է:*

*Արդ՝ կանցնեմ համառոտակի հիշատակելու առաջին պատճառի մասին, որի առթիվ վերևում խոստացանք ասել՝ հետ թողնելով այն խուժիկին: Քանզի մենք ստույգ վերահասու եղանք [մի] շարք զրույցների՝ [լսած] ոչ միայն մեկից կամ երկուսից, կամ երեքից, այլ շատերից [և] շատ անգամ, և այժմ քո հարցասիրությանը կասեմ ըստ իմ առաջին հանձնառության, ո՜վ հոգևոր հեղինակ[8], որովհետև նախապես պատվեր ստացա քեզնից, որ մենք ամեն բանի [համար] հոգ տանենք և հավաստին ի լրո և ի գրո շարադրենք այս պատմության մեջ:*

*...Հայոց կաթողիկոս Աբրահամի ժամանակներում, երբ սա նստեց իր հայրապետական աթոռին, նրա մոտ եկան վրաց և աղվանից կա-*

*թողիկոսները, քանզի այն ժամանակ նրանք Սուրբ Գրիգորի աթոռի արքեպիսկոպոսության աստիճան ունեին, և ըստ նախկին հայրերի սահմանման ու սովորության՝ եկան Աբրահամի մոտ նրա հայրապետության առաջին տարում ի սեր և ի հնազանդություն: Իսկ սա նրանց ընդունեց մեծ պատվով և հոգևոր սիրով, ինչպես հարկն է, և նրանց նստեցրեց յուրաքանչյուրին իր գահավորակին, ինչպես որ նրանց նստելու սովորությունն էր: Եվ ճաշի ժամին տեր Աբրահամի ձեռքից առան հացը, օրհնեցին ու կերան մինչև գինի [ըմպելու] ժամանակը: Ապա տեր կաթողիկոսն առավ [գինին], օրհնեց և նախ տվեց աղվանից կաթողիկոսին, իսկ երբ կամեցավ հաջորդը տալ Կյուրոնին, նա չկամեցավ վերցնել՝ խոժոռվելով իր մտքում: Իսկ երբ Աբրահամ կաթողիկոսն այս տեսավ, այդ պահին ոչինչ չասաց: Ապա, երբ ստիպեց Կյուրոնին պատճառն ասել, հարցրեց [նրա] արարքի որպիսության մասին: Իսկ նա պատասխան տալով՝ ասաց. «Ինչո՞ւ եղավ իմ այս ստորացվելը քո կողմից, քանզի ես ավելի ավագ եմ, քան նա և [ավելի] մեծ իմ տնով [երկրով]: Իսկ այս տանը գահերեցությունը նախ իմն էր և ապա դրանը, որովհետև ես իմ վիճակով ավելի վեր եմ, քան դա, եպիսկոպոսների [քանակով] ևս առավել, հավատով էլ դրանից ավելի վաղ եմ՝ [սկսած] Սուրբ Գրիգորից և այս կողմ»:*

*Իսկ Աբրահամը, քանզի կամեցավ խաղաղեցնել, սկսեց արդարացնել նրան [աղվանից կաթողիկոսին] և ասաց. «Ես այդ ամենը չգիտեի, ո՜վ տեր եղբայր, միաժամանակ այդ պատիվն արեցի նրա ծերության համար՝ սովորելով Սուրբ Գրքից: Քանզի իմաստուններից մեկն ասաց, թե՝ «Սպիտակ մազերը պատվեցի և ծերերի առջև ոտքի կանգնեցի»: Եվ դարձյալ աստվածային Պողոսն [ասում է], թե՝ «Ծերունուն պետք է ընդունես իբրև հայր», իսկ մեկ ուրիշն [ասում է], թե՝ «Ծերությունն ավելի պատվական է»: Եվ Մովսեսի ժամանակ էլ իբրև խրատ Իսրայելի ժողովրդին [Սուրբ] Գիրքն ասում է. «Սպիտակ մազերի առջև պետք է վեր կենաս ու պատվես ծերունու երեսը, և [պետք է] երկյուղես քո Աստծուց»: Եվ սրանց նման այլ խոսքեր ասում են [նաև] այլ տեղերում: Արդ՝ քանզի նա ծեր էր, իսկ դու՝ երիտասարդ, նրան այդ պատիվը ոչ թե մեծության համար արեցինք և ոչ էլ այլ բաներով նրան նախամեծար համարեցինք, այլ միայն ծերության համար»:*

*Եվ այսչափ և այսպիսի խոսքերով խոսեց նրա հետ, [բայց] չկարողացավ հաշտության բերել: Եվ վեհարանի այլ պաշտոնյաներ, որ կային [այնտեղ] նույն խոսքերն էին ասում, որ թերևս խաղաղվի գրգռվածությունից և լռի: Բայց նա ավելի ու ավելի էր գրգռվում ցա-*

*սումով, իրեն մղում խռովության, որ կարծում եմ, [թե] միայն խռովության պատճառ էր որոնում: Եվ այնուհետև նրանցից ոչ ոք չկարողացավ նրան լռեցնել, քանզի թեպետև կամեցան վերացնել այն պատճառը, որ կամենում էր պատճառներ [համարել]՝ չկարողացան: Եվ անուհետև խաղաղություն չեղավ երկուսի միջև: Քանզի [Սուրբ] Գիրքն ասում է. «Խաղաղություն, խաղաղություն, բայց այնտեղ խաղաղություն չկար»:*

*Ապա այնուհետև Կյուրոնը վեր կացավ ու հեռացավ սեղանից: Եվ ոչ ոք այնտեղ եղած մարդկանցից չկարողացավ նրան հետ դարձնել:*

*Այս դրվագում [գլխում] ասացինք առաջին պատճենի պատճառները, որ մեզ վրա պատուհաս հասավ մարդաղավ Կյուրոնի փառասիրության պատճառով, որը մեկն էր, բայց մի բաժակի համար պատճառ եղավ մեզնից այնքան բազմամարդ ազգի բաժանման: Քանզի կա մահ, որ [ընդամենը] մի ցավից է հասնում մարդկանց: Քանզի Աստվածաշունչն Ադամի՝ փառքից ընկնելու մասին ասում է, թե՝ «Մի պտղից ճաշակեց,– ասում է,– և մահն էլ ընդունեց այդ մեկից», այլ ոչ թե երկու կամ երեք պտղից: Եվ դա՝ փառքի պատճառով, որից էլ [ծագում է] մեղքը, իսկ մեղքից էլ՝ մահը, [քանի] որ աստվածային հրամաններից լսեց, թե՝ «Հող էիր՝ հող կդառնաս»[9]: Որովհետև ձգտելով այլ փառքի, որ չուներ, նաև կորցրեց այն, որ ուներ:*

## ՎՐԱՑ ԲԱԺԱՆՄԱՆ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏՃԱՌԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԵՂԱՎ ԿՅՈՒՐՈՆԻ ՀԱԿԱՌԱԿՈՒԹՅԱՆ [ՀԵՏԵՎԱՆՔՈՎ]

***Գլ. ԿԳ.*** *Այս [ստորև ներկայացվածն] ասված է մեզ այլ պատմագիրների չարադրանքից, որը նպաստեց մեզ մեր գործում, քանի որ մենք պատմագրքերից տեղեկացանք վրաց բաժանման մեկ այլ պատճառի մասին ևս:*

*Այն ժամանակներում, երբ պարսիկներն ու հույները Հայոց երկիրը բաժանել էին իրենց միջև, հայերի ու հույների մեջ քննություն եղավ եկեղեցու դասակարգության մասին՝ վերին [երկնային] ինը դասերի նման: Որովհետև հույները վիճում ու մեծաբանում էին հայերի վրա, թե՝ «Ինչո՞ւ,– ասում էին,– մեր եկեղեցին ունի ինը դասակարգությունը, իսկ ձերը՝ ոչ: Մերը դասակարգված է ըստ վերինների ինը դասի, որ սրանք են՝ պատրիարքներ, արքեպիսկոպոսներ, մետրոպոլիտներ, եպիսկոպոսներ, քահանաներ, սարկավագներ, կիսասարկավագներ, կղերիկոսներ, գրակարդացներ»: Ապա այդ ժամանակ մերոնց բերանով ևս ասվեց (նրանց այդ կարգը դնելուց հետո), և ասա-*

*ցին. «Մենք էլ ունենք եկեղեցու նույն դասերը հաստատված, որ մեզ ավանդվել է Սուրբ Գրիգորից, և [մենք] էլ Աստծո կամքով ենք դասակարգում, որովհետև մեր [աթոռը] ևս Սուրբ Թադեոսի առաքելական աթոռն է, և նրանից հետո՝ Սուրբ Գրիգորի, որը մեզ համար երկրորդ առաքյալ եղավ, միաժամանակ նաև՝ Լուսավորիչ:*

*Այն ժամանակ պարսիկներն ու հույները, ինչպես շատ անգամ ասվեց, Հայաստանը բաժանել էին իրենց միջև և տեր Մովսեսը Սուրբ Գրիգորի աթոռն էր զբաղեցնում Դվինում: Իսկ Հունաց բաժնում նրան հակաթոռ [կաթողիկոս] նստեցրին ոմն Հոհանի՝ նրան [Դվինին], մոտիկ: Իսկ Սյունիքի տերերը հայրապետական երկատված աթոռը մերժեցին և չհամաձայնվեցին հնազանդվել հակառակության մեջ [գտնվողներից] որևէ մեկին՝ իրենց առաքինի Պետրոս եպիսկոպոսի հրամանով, որն {իր} վախճանին մոտենալով՝ իր թեմին պատվեր տվեց, որպեսզի ձեռնադրությունը և օրհնության մեռոնը ստանան Աղվանքից, մինչև Սուրբ Գրիգորի հայրապետական աթոռը միավորվի: Եվ դրանից հետո և հետագայում սյունեցիները ձեռնադրությունը և մեռոնը Աղվանքից էին վերցնում, մինչև որ վերացավ հակառակությունը, ասում է Պատմագիրը[10]: Այդ պատճառով Աղվանքի կաթողիկոսը [ևս] չեկավ Աբրահամի ձեռնադրության ժողովին, մինչև որ Աբրահամը միապետեց իր հայրապետական աթոռին:*

*Եվ եկեղեցական աստիճանների ինը դասակարգության համար ավարտեցին և Աբրահամին նշանակեցին պատրիարք, Աղվանքի [եպիսկոպոսապետին]՝ արքեպիսկոպոս, իսկ վրաց [եպիսկոպոսապետին]՝ մետրոպոլիտ: Եվ վրաց [կաթողիկոս] Կյուրոնը չհամաձայնելով մնալ այն աստիճանին, որին [նրան] հաստատեցին, ըմբոստացավ և հակառակն էր վիճարկում: Իսկ Աբրահամ հայրապետն ասում էր, որ [Աղվանքը] Վրաստանից ավելի վաղ է ընդունել հավատը, ուստի նրանց է պատշաճ արքեպիսկոպոսությունը: Այս մաքառման մեջ և ուղղափառ հավատի խնդրով վրացիները շուռ եկան և դարձան քաղկեդոնիկ՝ սատանայի ու Կյուրոնի սադրանքով, էլ առավել՝ Մորիկ կայսեր կամքով: Այն լիրբ Կյուրոնը նաև հունական զորավարներից էր գրգռվել՝ իր համար գահերեցություն պահանջելով Աղվանքի նկատմամբ:*

*Դրան չհամաձայնելով՝ Աղվանքում մեկ ուրիշին ցույց տվեցին, որն ավելի վաղ էր իբրև առաքյալ եկել Աղվանից երկիր՝ Եղիշե անունով[11], որի ով լինելը կկամենայի նախ պատմել: Սա եղել է Փրկչի աշակերտներից մեկը՝ ձեռնադրված Տիրոջ եղբայր Հակոբի կողմից: Եվ համաձայնելով դրան՝ Աղվանից տանը արքեպիսկոպոսություն*

*տվեց [Աբրահամը]՝ իրավունք վերապահելով [ունենալ ստորադաս եպիսկոպոսներ], իսկ մետրոպոլիտությունը [տվեց] Սյունյաց տանը: Իսկ Կյուրոնը հեռացավ նաև այդ անգամ, և Աբրահամ մեծ հայրապետը միապետեց իր [իշխանության] ներքո Աղվանքն ու Սյունիքը, և այնուհետև դարձան մի հոտ և մի հովիվ և հնազանդ սուրբ երկնային տանը՝ Սուրբ Գրիգորի աթոռին:*

*1. Այսինքն՝ Սմբատ Բագրատունու մարզպանության (591-617):*

*2. Իրականում Աբրահամ Ա Աղբաթանեցին աթոռակալել է ութ տարի՝ 607-615 թվականներին:*

*3. Ըստ «Նոր բառգիրք հայկազեան լեզուի», նշանակում է Պարսկաստանի Խուժիստան նահանգի բնակիչ (հատ. 1, Ա-Կ, Վենետիկ, 1836, էջ 983):*

*4. Իրականում հայոց թվականության առաջին տարին համընկնում է Քրիստոսի 551/552 տարվան. այն հաստատվել է Դվինի 554 թ. եկեղեցաժողովում:*

*5. Այսինքն՝ երեսպաշտությամբ:*

*6. Տե՛ս **Բ Կորնթ.**, Ժ, 17:*

*7. Հմմտ. **Մատթ.**, ԻԳ, 15:*

*8. Տվյալ դեպքում նշանակում է հոգևոր առաջնորդ:*

*9. **Ծննդ.**, Գ, 19:*

*10. Խոսքը վերաբերում է և՛ Մովսես Կաղանկատվացուն, և՛ Մաշտոց Եղիվարդեցուն:*

*11. Մովսես Կաղանկատվացին օգտագործում է Եղիշա եղբը:*

# II. V-VI ԴԱՐԵՐԻ ՀԱՅՈՑ ԱԶԱՏԱՄԱՐՏԸ

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄՆ ԸՍՏ ԵՂԻՇԵԻ

### ՎԱՐԴԱՆԻ ԵՎ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### ԱՌԱՋԻՆ ԵՂԱՆԱԿ

### *ԺԱՄԱՆԱԿԸ*

*[Պարսից Հազկերտ թագավորին] մոգերն ասում են. «Քա՛ջ թագավոր, աստվածները տվին քեզ այս տերությունը և հաղթություն. նրանք ամենևին մարմնավոր հարստության կարոտ չեն, միայն թե մի կրոնի դարձնես քո տերության մեջ գտնված բոլոր ազգերին ու ժողովուրդներին: Այն ժամանակ հույների երկիրն էլ հնազանդվելով՝ կենթարկվի քո իշխանությանը, դու կտիրես նաև Քուշանների երկրին[1] և մինչև անգամ հույները քո իշխանության դեմ դուրս չեն գա: Միայն թե քրիստոնյաների կրոնը մեջտեղից վերացրու»:*

## ԵՐԿՐՈՐԴ ԵՂԱՆԱԿ

*[Այնուհետև Հազկերտը] հրաման տվեց և ասաց. «Իմ իշխանության ներքո գտնված բոլոր ազգերն ու ժողովուրդները թող բոլորը ձեռք քաշեն [իրենց] մոլար կրոններից և գան երկրպագություն անեն միմիայն արեգակին, զոհեր մատուցելով և աստված անվանելով [նրան], և սպասավորելով կրակին. բացի այս ամենից՝ մոգության օրենքներն էլ կատարեն, առանց որևէ բան պակաս թողնելու:*



**Հազկերտ II**

*Այս ասելով՝ բարձրաձայն հրապարակում էր [հրամանը] և խիստ պատվեր էր տալիս ամենքին. և չտապով սուրհանդակներ էր ուղարկում բոլոր հեռավոր ազգերի մոտ, այդ նույն հրամանը հասցնում էր բոլորին:*

*... Բացի այս ամենից՝ մի այլ չարություն էլ նյութեց: Իր հավատարիմ ծառաներից մեկին, որի անունը Դենշապուհ էր, գործով ուղարկեց Հայոց երկիրը. սա եկավ տեղ հասավ արքունի հրամանով, բերեց մեծ թագավորի ողջույնը և խաղաղասեր կեղծավորությամբ ամբողջ Հայոց երկիրը աշխարհագիր արեց՝ իբր թե հարկերը ներելու և այրուձիու ծանրությունը թեթևացնելու նպատակով: Թեպետև երեսանց կեղծավորություն էր անում, բայց ներքուստ երևում էին չարագույն դիտավորությունները:*

*Առաջին, եկեղեցու ազատությունը ծառայության տակ դրեց:*

*Երկրորդ, վանքերում բնակված միայնակյաց քրիստոնյաներին նույն աշխարհագրի տակ գցեց:*

*Երրորդ, երկրի հարկն ավելի ծանրացրեց:*

*Չորրորդ, նախարարներին բանսարկությամբ թշնամացրեց միմյանց հետ և ամեն տան մեջ խռովություն գցեց:*

*Եվ այս ամենն անում էր, որպեսզի գուցե քանդի միաբանությունը, և եկեղեցու ուխտը ցրվե, և միայնակյացներին փախցնի, և շինականներին տկարացնի. և չափազանց աղքատության պատճառով ակամա ընդունենն մոգական կրոնը:*

*Բայց ամենից վատթարը հինգերորդն էր. որովհետև նա, որ երկրի հազարապետն[2] էր, համարվում էր քրիստոնյա աշխարհականների վերակացու հայրը. սրա դեմ գրգռելով ամբաստանություն հարուցեց, և նրան գործից հանելով՝ նրա փոխարեն մի պարսիկ բերեց [մեր] աշխարհը, և մի մոգպետի էլ աշխարհիկ դատավոր [կարգեց], որպեսզի եկեղեցու փառքը նսեմացնեն:*

*Սակայն թեպետև այս բոլոր գործերը դժնդակ էին, բայց դեռ ոչ ոք հայտնի կերպով ձեռք չէր տվել եկեղեցուն. այդ պատճառով էլ ոչ ոք նրան չընդդիմացավ, թեև հարկերը ծանր էին: Որովհետև որտեղից պետք էր հարյուր դահեկան առնել, կրկնապատիկն էին առնում. այսպես էլ [հարկի տակ] դրին եպիսկոպոսներին և երեցներին, ո՛չ միայն շեն, այլև ավերակ տեղերը: Մանավանդ ո՞վ կարող է պատմել, թե ինչպիսի ծանր տուրքեր ու սակեր, բաժեր ու հասեր[3] էին նշանակված լեռների, դաշտերի և անտառների վրա: Առնում էին ո՛չ թե ինչպես վայել է պետական արժանապատվությանը, այլ ավազակաբար հափշտակելով, այն աստիճան, որ իրենք էլ մեծապես զարմանում էին՝ թե մի տեղից, որ այսքան գանձ է դուրս գալիս, էլ ինչպե՞ս է չեն մնում այդ աշխարհը:*

*Եվ երբ տեսան, թե այն ամենով չկարողացան զզվեցնել, այն ժամանակ հայտնապես հրաման տվին մոգերին և մոգպետներին մի նամակ գրել՝ իրենց ձախուծուռ հավատի համաձայն: Եվ նամակի պատճենն այս է.*

***«Միհրներսեհ Վզուրկ[4] հրամանատար Երան և Աներան[5], Հայոց մեծաց շատ ողջույն.***

*Իմացած եղեք, որ ամեն մարդ, ով բնակվում է երկնքի տակ և չունի դենիմազդեզն[6] կրոնը, խուլ է և կույր և հարամանիի[7] դևերից խաբված:*

*... Արդ երկու բան կա ձեր առաջ. կա՛մ կետ առ կետ պատասխան տվեք այս նամակին և կա՛մ վեր կացեք Դուռն[8] եկեք և ներկայացեք Մեծ արքային:*

## *ԱՅՆ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ, ՈՐՈՆՔ ԺՈՂՈՎՎԵՑԻՆ ԱՅՐԱՐԱՏՅԱՆ ԳԱՎԱՌԸ ԵՎ ՆԱՄԱԿԻՆ ՊԱՏԱՍԽԱՆ ՏՎԻՆ*

| | |
|---|---|
| **Հովսեփ՝** | *Այրարատի եպիսկոպոս,* |
| **Սահակ՝** | *Տարոնի եպիսկոպոս,* |
| **Մեղետ՝** | *Մանազկերտի եպիսկոպոս,* |
| **Եզնիկ՝** | *Բագրևանդի եպիսկոպոս,* |
| **Սուրմակ՝** | *Բզնունյաց եպիսկոպոս,* |
| **Տաճատ՝** | *Տայոց եպիսկոպոս,* |
| **Թաթիկ՝** | *Բասենի եպիսկոպոս,* |
| **Քասու՝** | *Տուրուբերանի եպիսկոպոս,* |
| **Երեմիա՝** | *Մարդաստանի եպիսկոպոս,* |
| **Եվղաղ՝** | *Մարդաղվո եպիսկոպոս,* |
| **Անանիա՝** | *Սյունյաց եպիսկոպոս,* |
| **Մուշե՝** | *Արծրունյաց եպիսկոպոս,* |
| **Սահակ՝** | *Ռշտունյաց եպիսկոպոս,* |
| **Բասիլ՝** | *Մոկաց եպիսկոպոս,* |
| **Գադ՝** | *Վանանդի եպիսկոպոս,* |
| **Եղիշա՝** | *Ամատունյաց եպիսկոպոս,* |
| **Եղբայր՝** | *Անձավացյաց եպիսկոպոս,* |
| **Երեմիա՝** | *Ապահունյաց եպիսկոպոս:* |

*Այս բոլոր եպիսկոպոսները և բազմաթիվ քորեպիսկոպոսներ և պատվական երեցներ զանազան տեղերից եկեղեցու Սուրբ ուխտի հետ միասին՝ միաբան և միահավան, միահամուռ ժողովվելով թագավորանիստ վայր Արտաշատում՝ մեծամեծ նախարարների և աշխարհի ամբողջ բազմության հավանությամբ գրեցին նամակի պատասխանը:*

***ՀՈՎՍԵՓ ԵՊԻՍԿՊՈՍ, ինձ հետ միաբանածների հետ միասին մեծամեծներից մինչև փոքրերը, Արիների և Անարիների Միհրներսեհ մեծ հազարապետին շատ ու շատ ողջույն խաղաղասեր մտքով, քեզ և Արյաց ամբողջ զորաբանակին:***

*«Նախնիներից սովորություն ունենք՝ աստվածատուր պատվիրանի համաձայն՝ աղոթք անել թագավորի կյանքի համար և անդադար խնդրել Աստծուց նրա համար երկար կյանք, որպեսզի խաղաղությամբ վարի այն տիեզերական իշխանությունը, որ Աստված է հանձնել նրան. որպեսզի դրա երկարատև խաղաղ կառավարության ժամանակ մենք էլ առողջությամբ և աստվածապաշտությամբ անցկացնենք մեր կյանքը:*

*Մեր աշխարհն ուղարկված քո նամակի վերաբերմամբ [պատասխանում ենք.*

*... Այս հավատից մեզ ոչ ոք չի կարող խախտել, ո՛չ հրեշտակները և ո՛չ մարդիկ, ո՛չ սուրը և ո՛չ հուրը, ո՛չ ջուրը և ո՛չ էլ որևէ դառն հարված:*

*Մեր ամբողջ գույքն ու ստացվածքը քո ձեռքումն են, և մեր մարմինները քո առաջն են. քո կամքի համաձայն արա՛, ինչ ուզում ես: Եթե այս հավատի մեջ թողնես, ո՛չ երկրի վրա ուրիշ տեր կընդունենք քո փոխարեն և ո՛չ էլ երկնքում ուրիշ Աստված կընդունենք Հիսուս Քրիստոսի փոխարեն, որից բացի՝ ուրիշ Աստված չկա:*

*Իսկ եթե այս մեծ վկայությունից հետո ուրիշ բան հարցնես, ահավասիկ պատրաստ ենք՝ մեր ամբողջ մարմինը քո ձեռքը տված. արա՛ շուտով՝ ինչ որ կամենում ես: Քո կողմից տանջանք, իսկ մեր կողմից հանձնառություն. քո սուրը և մեր պարանոցները: Մենք ոչնչով ավելի լավ չենք մեր նախնիներից, որոնք այս հավատի համար դրին իրենց գույքն ու ստացվածքը և մարմինները:*

*... Իսկ դու այս ամենից հետո մեզ այլևս մի՛ հարցնի. որովհետև մեր հավատի ուխտը ո՛չ մարդու հետ է, որ երեխայի նման խաբվենք, այլ Աստծու հետ է անլուծելի կերպով, որ անհնար է քանդել ու հեռանալ, ո՛չ այժմ և ո՛չ հետո, ո՛չ հավիտյանս, և ո՛չ էլ հավիտենից հավիտյանս»:*

*Ամբողջ բազմությունը, մեծերից մինչև փոքրերը, միաբանվեցին այս մեծ վկայությանը. անսուտ երդում դրին՝ կյանքով և մահով հաստատ մնալ նրա վրա:*

*Երբ այս նամակն արքունիք հասավ և կարդացին մեծ Խոնաստանում[9] բանակի ամբողջ բազմության առաջ, շատերը, որ լսում էին գովում էին [տված] պատասխանները: Թեպետ և տերությունից երկյուղ էին կրում, սակայն գաղտնաբար մեկմեկու մոտ նույն գովասական վկայություններն էին տալիս. ճարտասանությունից ավելի զարմանում էին աներկյուղ համարձակության վրա:*

*Իսկ չարասեր մոգպետը մեծ հազարապետի հետ միասին չարախոսություն շնչեց և թագավորին իբրև անշիջանելի հուր բորբոքեց: Եվ թագավորն անմիջապես ներս կանչելով դպրապետին՝ հրամայեց հրովարտակ գրել. այլևս ո՛չ թե սովորության համաձայն, այլ դայրագին խոսքեր ինչպես ատելի և անպիտան անձերի, ամենևին չհիշելով տիրասեր մարդկանց մեծամեծ ծառայությունները, այլ միայն անունանուն կանչելու հրաման տալով այն մարդկանց, որոնց ինքը ճանաչում էր և որոնց անուններն են՝*

| | |
|---|---|
| *Սյունյաց տոհմից՝* | **Վասակ** *անունով.* |
| *Արծրունյաց տոհմից՝* | **Ներշապուհ** *անունով.* |
| *Ռշտունյաց տոհմից՝* | **Արտակ** *անունով.* |
| *Խորխոռունյաց տոհմից՝* | **Գադիշո** *անունով.* |
| *Մամիկոնյան տոհմից՝* | **Վարդան** *անունով.* |
| *Մոկաց տոհմից՝* | **Արտակ** *անունով.* |
| *Ապահունյաց տոհմից՝* | **Մանեճ** *անունով.* |
| *Ամատունյաց տոհմից՝* | **Վահան** *անունով.* |
| *Վահևունյաց տոհմից՝* | **Գյուտ** *անունով.* |
| *Անձևացյաց տոհմից՝* | **Շմավոն** *անունով:* |

*Այս նախարարներին անուն-անուն կանչեցին արքունի դուռը: [Հայ նախարարների] մի մասը հենց իրեն մոտ էին՝ բանակում, մյուսներն էլ հյուսիսային կողմերը՝ Հոնաց պահակում. նախարարներից ոմանց էլ թողել էր Հայոց աշխարհում:*

*... Երբ հասան արքունի դուռը՝ զատկի ավագ շաբաթ օրը ներկայացան Թագավորին: [Իսկ Թագավորը] մռնչալով ձայն արձակեց և ասաց. «երդվել եմ մեծ աստված արեգակով, որ իր ճառագայթներով լուսավորում է ամբողջ տիեզերքը և իր ջերմությամբ կենդանացնում է բոլոր արարածներին, որ եթե վաղն առավոտյան, սքանչելու[10] ծագելուն պես բոլորդ ինձ հետ միասին ծունր չդնեք նրա առաջ՝ նրան աստված դավանելով, ձեզ ամենևին զիջողություն չեմ անի, ամեն տեսակ նեղություն ու չարչարանք կթափեմ ձեզ վրա, մինչև որ ակամա կատարեք իմ կամքն ու հրամանը»:*

*... Այն ժամանակ երանելի նախարարներն առհասարակ բարձրացրին իրենց ձայնը և ասացին բոլորի առաջ. «Մի՛, Թագավո՛ր, այլևս մի՛ ասա մեզ այդ բանը, որովհետև եկեղեցին մարդու շինածը չէ և ո՛չ էլ արեգակի տվածը, որի (արեգակի) մասին դու թյուրիմացությամբ կարծում ես, թե աստված է. ո՛չ միայն աստված չէ նա, այլև կենդանի էլ չէ: ... Ուրեմն, ինչ ձևով ուզում ես վարվել՝ վարվի՛ր. բոլորս պատրաստ ենք այն ամեն հարվածների ու տանջանքների մեքենաների համար, որ սպառնացիր, ո՛չ միայն չարչարվելու, այլև մեռնելու: Եվ եթե դարձյալ նույն բանը հարցնես, ամեն մեկիցս սրանից էլ ավելի [կտրուկ] պատասխան կլսես»:*

*... Այն ժամանակ Թագավորը երեք-չորս անգամ կրկնում էր իր անսուտ երդումն արեգակի անունով և ասում էր այսպես. «Ձեք կարող խախտել իմ հաստատուն որոշումները, և թույլ չեմ տա, որ դուք շուտով հասնեք ձեր ուզածին. այլ ձեզ բոլորիդ և ովքեր այստեղ զոր-*

*քի մեջ են, չարաչար կապանքներով Սագաստան վտարել կտամ ան-ճանապարհ տեղերով, այնպես որ ձեզանից շատերը գնալու ժամանակ խորշակից կսատկեն, իսկ մնացածները կզգվեն ամուր բերդերը և անելանելի բանտերը: Ձեր աշխարհն էլ անթիվ զորք կուղարկեմ փղերի հետ միասին և ձեր կանանց ու որդիներին Խուժաստան[11] քշել կտամ, և ձեր եկեղեցիները և ինչ որ վկայարան եք կոչում, կքանդեմ, կավերեմ և կփչացնեմ, և եթե էլի մեկն ընդդեմ դուրս եկած լինի, գազանների ոտների տակ գցելով՝ անողորմ մահով կմեռնի: Այս ամեն ասածներս կանեմ և կկատարեմ [ձեր] աշխարհում մնացածների վերաբերմամբ»:*

*Եվ անմիջապես հրամայեց պատվական նախարարներին մեծ անարգանքներով հեռացնել իր աչքի առաջից:*

*Թագավորի ներքին խորհրդակիցներից մեկը, որ գաղտնի կապված էր Քրիստոսի սիրով և նույնիսկ մկրտված էր կենդանի ավազանի մեջ, մեծապես հոգ էր տանում վշտացածների [Հայոց նախարարների] կյանքը փրկելու: Եվ երբ հաստատապես ստուգեց, որ թագավորն իր սպառնացած բազմաթիվ չարիքները բոլորն ուզում է կատարել Հայոց աշխարհի գլխին, թեպետև նրանցից ոչ բոլորին, բայց մի քանիսին խրատ տվեց և սովորեցրեց, թե ինչ հնարք գործ դնեն, որ առժամանակ իրենց փրկեն այն նեղ դրությունից:*

*Եվ ամենքն այս անքակտելի ուխտը դնելով Աստծու հետ, որ հաստատ մնան իրենց նախկին մտադրության վրա, իրենց միևնույն խրատատուին պատգամավոր ուղարկեցին ներս, իբր թե կատարվելու է նրա անօրեն կամքը:*

*Երբ այս լսեց թագավորը՝ չափազանց ցնծաց և ուրախացավ, կարծելով, թե աստվածներն իրեն օգնության են հասել, չրջելով և ոչնչացնելով աստծու ծառաների հաստատուն մտադրությունները, և ահա երկրպագություն են մատուցանում արեգակին, պատվելով նրան զոհերով և մոգության բոլոր օրենքներով:*

*Բայց այս բանը չկարողացավ հասկանալ ցնորվածը, թե արդարության արեգակի անստվար լույսը մաշում և ոչնչացնում էր նրա խավարային մտադրությունները և եղծում-ապականում էր նրա ամբողջ խեղաթյուր կամքը: Եվ ճշմարիտ հայտնությունից զրկված՝ ամենևին չհասկացավ այն պատրանքն ու խաբեությունը, որով սխալեցրին նրան: Նրանց առաջ երկրավոր պարգևներ էր թափում և նորից բոլորին վերադարձնում էր իրենց պատիվն ու գահը, առաջ քաշելով և երևելի դարձնելով նրանց իր ամբողջ տիեզերական իշխանության մեջ: Եվ նրանցից յուրաքանչյուրին անչափ առատությամբ*

*ագարակներ ու ավաններ էր շնորհում արքունիքից, սիրելիներ և բարեկամներ էր անվանում նրանց և կամակոր մտքի հպարտ հանդգնությամբ կարծում էր, թե ճշմարտությունը կփոխանակվի ստության հետ։*

*Եվ այս անելուց հետո՝ շատ այրուձի ուղարկեց նրանց հետ, և մոգերից էլ ոչ պակաս, քան յոթ հարյուրից ավելի ուսուցիչներ հղեց նրանց հետ և մի մեծ իշխանի էլ նրանց վրա մոգպետ կարգեց։ Խոնարհվում էր և աղաչում պատվիրելով, թե մինչև ես այս պատերազմից խաղաղությամբ հետ դառնամ, դուք ամեն բան արեք ու կատարեցեք իմ կամքի համաձայն։ Եվ այսպես շքով ու պատվով երկար ճանապարհ էր դնում նրանց դեպի Հայոց երկիրը։*

*Իսկ ... [մոգերը] փափագում էին շուտով կատարել [Թագավորի] հրամանը. ձայն տվին հեռավոր երկրները, որ վեր կենան, գնան արևմտյան աշխարհը։ Եվ դեռ չէին հասել Հայոց մեծ աշխարհը, որ փայտի միջոցով վիճակ էին գցում, թե ո՛ր ժողովուրդը [մոգերի] ո՛ր դասին է բաժին ընկնելու աշակերտելու համար։ Որովհետև առհասարակ հրաման էին առել արքունիքից մտնել ինչպես Հայոց, այնպես էլ Վրաց և Աղվանից և Լփնաց, Աղձնյաց և Կորդվաց և Ծավդեից և Դասն աշխարհները, և դարձյալ ուր որ զանազան տեղեր պարսից իշխանության մեջ ծածուկ պաշտում էին քրիստոնեությունը։*

*Եվ անակնկալ հարձակվելով՝ շտապում էին կողոպտել սուրբ եկեղեցիների գանձերը. և այնուհետև ինչպես դևեր հանդիպում էին իրար։ Եվ հավաքվեց մեծ զորաբանակ, և չարասեր սատանան իբրև զորավար երևաց նրանց մեջ, և անդադար հորդորելով՝ բոլորին սաստիկ շտապեցնում էր։ [Գործն սկսելու] ժամկետ նշանակելով վեցերորդ ամիսը՝ տագնապի մեջ էին և շտապեցնում էին արքունի հրամանով։*

*«Նավասարդից մինչև նավասարդ, ասում է, մեծ Թագավորի իշխանության տակ գտնված բոլոր վայրերում պետք է վերանան եկեղեցու արարողությունները, պետք է փակվեն և կնքվեն սուրբ տաճարների դռները, նվիրական անոթները պետք է գրով ու համարով հարքունիս գրավվեն, լռեն սաղմոսերգության ձայները և դադարեն անսուտ մարգարեների ընթերցվածները։ Քահանաները չվստահանան իրենց տներում ուսուցանել ժողովրդին, և Քրիստոսին հավատացող այն տղամարդիկ ու կանայք, որոնք բնակված են մենանոցներում, փոխեն իրենց հագուստը՝ աշխարհական կարգի համաձայն։*

*Նույնպես և նախարարների կանայք պետք է ընդունեն մոգերի ուսմունքն ու վարդապետությունը։ Ազատների և շինականների*

*տղաներն ու աղջիկները պետք է կրթվեն նույն մոգերի հրահանգների համաձայն: Պետք է կարճվի և արգելվի սուրբ ամուսնության օրենքը, որ ունեին նախնիքներից քրիստոնեության սովորության համաձայն. մեկ կնոջ փոխարեն թող շատ կանայք առնեն, որպեսզի Հայոց ազգն աճի-բազմանա: Աղջիկներն ամուսնանան [իրենց] հայրերի հետ, և քույրերը՝ եղբայրների հետ. մայրերը չխորշեն [իրենց] որդիներից, այլև թոռները մտնեն [իրենց] պապերի անկողինը:*

*... Այս ամենը, ինչ որ ասացինք, միաժամանակ թող բոլորը կատարեն մինչև տարվա վերջը. իսկ մնացած բոլոր բաները հետագայում կպատրաստեն»:*

*Մոգերն ու մոգպետներն այս բոլոր հրամաններն ու պատվերներն ստանալով՝ գիշեր ու ցերեկ շտապում էին հասնել Հայոց աշխարհը. և անչափ ուրախությունից բնավ չէին ձանձրանում ճանապարհի երկարությունից:*

## ԵՐՐՈՐԴ ԵՂԱՆԱԿ

*... Որովհետև ահա պարսից մեծ բանակում զանազան ազգությունների մարդիկ, որ հավատացել էին Քրիստոսի Սուրբ Ավետարանին, երբ տեսան Հայերի չար հանձնառությունը, սաստիկ խոցվեցին իրենց մտքերում: Նրանցից շատերը ծանր սուգի, թախծի մեջ՝ վշտացած հոգով ու դառն արտասուքով եկան ու հանդիմանեցին նախարարներին և խիստ պախարակեցին քահանաների խմբին:*

*Բոլորին խայտառակում էին և ասում. «Ի՞նչ պիտի անեք այդ Սուրբ Կտակարանները կամ ո՞ւր պիտի տանեք տերունական սեղանի անոթները. մի՞թե պիտի մոռանաք ձեր հոգևոր օրհնությունները և կամ պիտի լռեք ու դադարեցնեք մարգարեական ձայնը: Աչքերդ փակեցիք՝ չկարդալու համար և ականջներդ խցեցիք՝ չլսելու համար. մի՞թե պիտի չհիշեք այն, ինչ որ անմոռաց կա ձեր մտքում: Ի՞նչ պիտի անեք Տիրոջ պատվիրածը՝ «Ով ինձ ուրանա մարդկանց առաջ, ես էլ նրան կուրանամ իմ երկնավոր Հոր ու սուրբ հրեշտակների առաջ»[12]:*

*Այս և սրանից է՛լ ավելին խոսեցին մեծամեծ իշխանների հետ ու ցավերի վրա ցավեր ավելացրին: Հայտնել և պարզել նրանց իրենց մտադրությունը՝ չէին կարող, լռել և պատասխան չտալն էլ անհնար էր. սրտերը պատռվում էր, և հորդ արտասուք էին թափում: Նրանց հետ միասին՝ լսողներն ու տեսնողներն էլ դառնացած բոլորն անմխիթար սուգի մեջ էին ընկնում:*

*Այն ժամանակ այնտեղ զորքի մեջ եղած քահանաները, սրտերի*

*բարկությունից այլևս չկարողանալով համբերել, անջատվեցին հեռացան նախարարներից և ամբողջ բազմությունից և մեկին չտապով սուրհանդակ ուղարկեցին ձիով Հայոց աշխարհը: Սա գույժը բերանն առած և օձիքը պատառելով հասավ եպիսկոպոսների ժողովին, սաստիկ արտասանելով կանգնել-պատմում էր չարչարանքների բոլոր անցուդարձը, բայց նրանց չէր հայտնում ծածուկ մտադրությունը:*

*Այն ժամանակ եպիսկոպոսները ցրվեցին ամեն մեկն իր իշխանությունը, և քորեպիսկոպոսներ ուղարկեցին գյուղերն ու ագարակները և լեռնային գավառների բազմաթիվ ամրոցները: Դրդեցին հավաքեցին մեծ բազմությամբ այր և կին, շինական և ազատ, քահանա և միայնակյաց. խրատեցին, ամրապնդեցին և բոլորին Քրիստոսի զինվոր դարձրին:*

*Եվ խորհրդի առաջին վճիռն այս հաստատվեց. «Հարազատ եղբոր ձեռքը թող բարձրանա այն մերձավորի դեմ, որ դուրս է եկել Աստծու պատվիրանի ուխտից. հայրը չխնայի որդուն, և որդին չակնածի հոր պատվից: Կինը կռվի իր ամուսնու դեմ, և ծառան դիմադրի իր տիրոջը: Աստվածային օրենքը թագավորի ամեն բանում, և նույն օրենքից հանցավորներն ստանան իրենց դատապարտությունն ու պատիժը»:*

*Երբ այս այսպես հաստատվեց ու կարգավորվեց, բոլորն էլ զինված դուրս եկան՝ սաղավարտները գլուխներին, սրերը մեջքներին և վահանները ձեռներին, ո՛չ քաջ տղամարդիկ, այլև արիասիրտ կանայք:*

*Իսկ Հայոց զորագունդը բոլոր օգնականներով ու բազմաթիվ մոգերով չորրորդ ամսին եկան հասան Հայոց աշխարհը, մի մեծ գյուղաքաղաք, որի անունն էր Անգղ: Այդտեղ բանակ դրին, հավաքվեցին, տեղավորվեցին և ամեն կողմերից անթիվ բազմություն ժողովվեց այնտեղ:*

*Եվ այնպես պատահեց, որ քսանհինգ օրից հետո մի կիրակի օր մոգպետն ինքը մոգերի հետ միասին եկավ մեծ ուժով, որպեսզի քանդի եկեղեցու դռները. ուզում էր փորձել, թե գործն ինչ ընթացք կստանա: Իսկ Սուրբ Ղևոնդ երեցն առաջին խորհրդակիցների և բազմաթիվ ուխտակիցների հետ միաբան այնտեղ պատրաստ գտնվեց: Թեպետ լավ տեղյակ չէր բոլոր նախարարների մտադրություններին և ո՛չ էլ մոգպետի ուժին ու զորությանը, ամեննևին չսպասեց բոլոր եպիսկոպոսներին և նույնիսկ մի քիչ էլ չհամբերեց ու չներեց անօրեն իշխանին, այլ մեծ աղմուկ ու տագնապ առաջացրեց զորքերի և մոգերի մեջ: Որովհետև դագանակները ձեռքերն առած՝ մոգերի և մոգպետի գլուխները ջարդեցին, բոլորին փախցրին իրենց կացարանները,*

*իսկ իրենք պաշտամունքը վերսկսելով եկեղեցում՝ կիրակնօրյա կարգն էին կատարում, շարունակելով այն ամբողջ նույն կիրակի օրը:*

*Այս խռովահույզ տագնապից հետո՝ Հայոց աշխարհի բոլոր կողմերից տղամարդկանց ու կանանց մեծ բազմություն հասավ նույն տեղը: Եվ այսպես [նրանք] մեծ սարսափ էին զգում մոգպետի վրա: Սա ստեպ-ստեպ աղաչում էր իր օգնականներին, որ հնար գտնեն իրենից մահից փրկելու և ողջ-առողջ նորից արքունիք հասցնելու:*

*Իսկ այն գործի մասին, որի համար եկել էր, ստիպում էր նրանց և ասում. «Թողեք գրեմ և ցույց տամ մեծ թագավորին, որ ձեռք վերցնի այսպիսի առաջարկություններից. որովհետև եթե աստվածներն իրենք էլ մեզ օգնության գան, հնարավոր չէ, որ Հայաստանում հաստատություն գտնի մոգական կրոնը, ինչպես որ փորձեցի եկեղեցու ուխտի միաբանությունը: Որովհետև եթե այս աշխարհի զորքն էլ մոգեր լինեին, նրանք ամենևին չէին խնայի և սրանց էլ կսատկեցնեին, ո՛չ միայն դրսից եկածներին, այլև իրենց եղբայրներին, որդիներին և բոլոր մերձավորներին, ինչպես նաև հենց իրենց: Մարդիկ, որոնք ո՛չ շղթաներից են վախենում, ո՛չ տանջանքներից երկյուղ կրում և ո՛չ հարստությունը բանի տեղ դնում և, վերջապես, որ բոլոր չարիքներից ամենից վատթարն է, մահը գերադասում են կյանքից, ո՞վ է, որ կարող է նրանց դիմադրել»:*

*... Մի գիշեր ուխտի ամբողջ բազմությունը խորհուրդ կազմեց և զորքերի սպարապետին էլ կանչեցին խորհրդի. հարցրին, քննեցին և տեղեկացան, որ նրա դիտավորությունն անշարժ է և մի փոքր անգամ չի թերացել Քրիստոսի սիրուց: Եվ միաբան աղոթք անելով նրա համար, նրան կրկին ընդունեցին առաքինիների շարքը: Նրա միջոցով շատերին էլ գրավեցին նույն միաբանության մեջ, ովքեր առաջին միաբանությունից անջատված չէին. եկան-հավաքվեցին և մեծ զորագունդ կազմեցին: Եվ է՛լ ավելի զատվեցին-հեռացան մոգերից ու մոգպետից և անօրեն Վասակից:*

*Իսկ նա [Վասակը] այնքան հիմարացրեց ու շվարեցրեց մոգպետի միտքը, որ նույնիսկ չթողեց, որ նա գործի հետևանքները հասկանա: Սկսեց մոգեր բաժանել նախարարների տները և մեծ-մեծ ռոճիկներ նշանակել, կենդանիներ զոհել և բռնությամբ ստիպել կնքված մարդկանց, որ զոհած միս ուտեն և արեգակին երկրպագություն տան: Երբ այսպիսի պիղծ խառնակությունն սկսեց շատանալ ամբողջ երկրում, այն ժամանակ մինչև իսկ փշտիպանների[13] կանայք հանդգնեցին կիրակի օրը եկեղեցու ճրագները հանգցնել և հավատավոր կանանց շորերը պատառոտել:*

*Այս աղմուկն ու վայնասունը երբ տեսան միաբան սուրբ եպիսկոպոսները, Ավետարանը ձեռներն առնելով գնացին և առանց հարցնելու մտան սպարապետի կայանը, որտեղ ժողոված էր Հայոց զորքը:*

*Իրենց ձայները բարձրացրին և ասացին. «Ձեզ բոլորիդ աղաչում ենք այս Սուրբ Ավետարանով. եթե մարզպանն ու մոգպետը ձեր խորհրդով են գործում այն անօրեն չարագործությունները, նախ մեր պարանոցները կտրեցեք և հետո ձեռք տվեք եկեղեցուն: Իսկ եթե նրանք առանց ձեր կամքի են կատարում այն չարագործությունները, թո՛ղ այսօր ևեթ դրա վրեժը պահանջվի նրանցից»:*

*Իսկ ովքեր գտնվում էին ներսում, սպարապետի կացարանում, ոտքի ելան, միաբան իրենց ձայները բարձրացրին առ աստված և ասացին. «Դո՛ւ, Տե՛ր, որ բոլորի սրտերը գիտես, քեզ ամենևին պետք չէ մարդկանց վկայությունը. եթե մենք սրտանց խոտորված լինենք քեզանից, այն դու ինքդ լավ գիտես. հենց այսօր էլ պատժի՛ր մեզ մեր մեղքերի համաձայն. իսկ եթե հաստատ ենք մնացել այս ավետարանի սուրբ ուխտին, դո՛ւ, Տե՛ր, մեր օգնականն եղի՛ր այսօր և ճշմարտության թշնամիներին տո՛ւր մեր ձեռքը, որպեսզի նրանց հետ վարվենք մեր կամքի համաձայն:*

*Երբ այս բանն ասացին, բոլորը գլուխները գետնին էին խփում, և ողջույն ստացան Ավետարանից ու եպիսկոպոսներից:*

*Այն ժամանակ բոլորն այնպես բորբոքվեցին զայրույթով, որ մինչև անգամ նրանք ոչնչի տեղ դրին արքունի պարգևները և ոտնատակ տվին ահռելի հրամանները: Շտապով վազեցին դեպի իրենց զենքերը, ամբողջ գիշերը սպառազինվեցին՝ պատրաստվեցին և արևը ծագելուն պես զորքը երեք մասի բաժանելով՝ վրա տվին [պարսից] բանակին: Առաջին գունդն արևելյան կողմից, երկրորդ գունդն արևմտյան կողմից և երրորդ գունդը հյուսիսային կողմից չուրջանակի իրենց մեջ առան-փակեցին մեծաթիվ բանակը. չատերին կոտորեցին, է՛լ ավելի չատերին երևելի մարդկանցից կապեցին և ամուր բերդերում բանտարկեցին իրենց իչխանության տակ:*

*Այն ժամանակ նորից հարձակվեցին այն բերդերի և ավանների վրա, որ երկրի զանազան ամուր տեղերում գրավել էին պարսիկները. կործանեցին-քանդեցին նրանց բնակությունները: Նախ՝ մեծ Արտաչատը իր ավաններով. և առան անմատչելի ամրոցները՝ Գառնի քաղաքը, Անին, Արտագերսը և իրենց ավանները. Երկայնորդն ու Արխնին և իրենց ավանները, Բարձրաբողը, Խորանիստը, Ծախանիստը, ապահով Ողականը և սրանց հետ իրենց ավանները, Արփանյալը, Վան ավանը, նրա հետ նաև իր ավանները. Գոյալն ու Կապույտը, Որոտն ու Վաչավաչատը:*

*Այս բոլորն ամեն մեկն իր գյուղերով ու ագարակներով, զորքերով ու զորագլուխներով նույն տարին առան ու կործանեցին: Տապալումքանդում էին և հրկիզում կրակի պաշտամունքի տեղերը: Մաքրում էին կռապաշտությունների պղծությունը և գրավում էին ատրուշանների սարք ու կարգը: Ոմանք հարձակվեցին Ատրպատական աշխարհի վրա և զանազան տեղերում մեծ վնասներ տվին՝ բազմաթիվ ատրուշաններ առնելով, ավերելով ու կործանելով:*

*... Եվ ահա շատ օրեր անցնելուց հետո եկավ-հասավ Աղվանից հազարապետը նույն աշխարհի սուրբ եպիսկոպոսի հետ միասին: Մեծ տագնապով շտապեցնում էր զորքին՝ ասելով. «Հոների աշխարհի կողմերը գտնված պարսից զորքը ետ դարձավ այս կողմը, եկավմտավ մեր երկիրը. և շատ ուրիշ պյրուձի էլ արքունիքից եկավ: Եվ բացի այս ամենից՝ հետները բերել են նաև երեք հարյուր մոգ վարդապետներ, պառակտեցին աշխարհը և ոմանց իրենց կողմը գրավեցին և կամենում էին եկեղեցու վրա ձեռք բարձրացնել. Թագավորի հրամանով ստիպում էին բոլորին և ասում էին. «Եթե հոժարակամ հանձն առնեք [մոգական]» կրոնը, պարգևներ ու պատիվներ կստանաք նրանից, և արքունիքը կների ձեր հարկերը, իսկ եթե [ձեր] կամ-*



***Ամարասի վանքը (IV դար)***

*քով հանձն չառնեք այդ, մեզ հրամայված է գյուղերում և քաղաքներում ատրուշաններ չինել, և Վռամական կրակը[14] դնել նրանց մեջ և ձեր ամբողջ երկրի վրա մոգեր ու մոգպետներ կարգել օրենսդիր: Եվ եթե որևէ մեկն անհնազանդ գտնվի և դիմադրի, ինքը մահվան պատիժ կկրի, իսկ նրա կինն ու որդիները երկրից արտաքսվելով՝ արքունի [կալվածներում աշխատելու] կգնան»:*

*Իսկ Հայոց զորքը, երբ լսեց այս դառն գույժը, ամենևին չթուլացավ քաջությունից և չլքվեց...*

*Այն ժամանակ մեծ նախարարներից մեկին Գնունյաց տոհմից՝ Ատոմ անունով, շտապով ուղարկեցին Արևմտյան երկիրը[15], որ Արևելքի չարամիտ թագավորի այս բոլոր մտադրությունները հայտնի, միաժամանակ պատմի նաև իրենց քաջությունները, որ կատարեցին գործով, ոտի տակ տալով ահեղ հրամանը, և մոգերին մեծապես սատկեցնելը, և նրանից օգնություն ու օժանդակություն խնդրի, և եթե նա կամենա, նրա ծառայության տակ մտնեն:*

*Եվ այս է այն գրության պատճենը, որ գրեցին Թեոդոս կայսրին.*

*«Հովսեփ եպիսկոպոս իմ բազմաթիվ եպիսկոպոսակիցներով և Հայոց ամբողջ զորքով, Վասակ մարզպան և Ներշապուհ Ռմբոսյան, սպարապետի հետ միասին և բոլոր մեծամեծ նախարարներով՝ մեծանուն Թեոդոս կայսրիդ շատ ողջույն հասնի մեր կողմից քեզ ու քո բոլոր զորքերին, որ ձեր խաղաղասեր մարդասիրությամբ տիրում եք ծովին ու ցամաքին, և երկրավորներիցս չկա մեկը, որ դեմ գնա ձեր խոչընդոտներ չունեցող տերությանը:*

*«Ինչպես որ մենք էլ ունենք ձեր առաքինի նախնիների մասին անսուտ հիշատակարաններ, նրանք Եվրոպան նվաճելով՝ անցան և տիրեցին Ասիացիների երկրներին ևս Սերայի սահմաններից մինչև Գադերովնի կողմերը, և ոչ ոք չգտնվեց, որ ըմբոստանար և նրանց ձեռքի տակից դուրս գար:*

*«Եվ այնչափ մեծ իշխանության մեջ մեծ ու սիրելի դաստակերտ էին անվանում Հայոց աշխարհը: Այս պատճառով էլ մեր նախնին՝ Տրդատիոսը, հիշելով ձեր առաջին սերը, որ մանկության ժամանակ իր հորն սպանող մարդախողխող հորեղբայրների ձեռքից փախչրած՝ փրկվել ու սնվել էր հույների երկրում և ձեր օգնությամբ թագավորելով տիրեց իր հայրենի աշխարհին, սույնպես և Քրիստոսի հավատն ընդունելով Հռոմի սուրբ եպիսկոպոսապետից, լուսավորեց հյուսիսի խավար կողմերը, որ և ահա արևելքի խավարասեր որդիներն ուզում են խլել, կորզել մեր ձեռքից:*

*Եվ մենք հույս դնելով ձեր արիության ու քաջության վրա, բաներ*

*կային, որ ընդդիմացանք նրանց հրամաններին, բայց է՛լ ավելի շատ բան կա, որին պատրաստվել ենք այսուհետև [ընդդիմանալու]»: Գերադասեցինք մահն աստվածպաշտությամբ, քան կյանքն ուրացությամբ. եթե դուք էլ պաշտպանեք մեզ, ահա կրկին կյանքի հանդիպեցինք և ոչ թե մահվան: Իսկ եթե մի քիչ էլ դանդաղեք, գուցե այս կրակի բոցը ուրիշ շատ աշխարհների էլ հասնի»:*

*Եվ երբ ներկայացան մեծ թագավորին և կարդացին Հայոց աշխարհի աղաչական գրությունն ու նախնիքների հիշատակարանները, շատ գրքեր մեջ բերին՝ կարդացին և նրանց մեջ էլ գտան նույն հաստատուն ուխտը:*

*Եվ մինչդեռ երանելի Թեոդոսը հարցուփորձ էր անում ամբողջ Սինկղիտոսին[16] և կամենում էր գործի համար մի հնար գտնել, խաղաղությամբ և մեծ հոժարությամբ հոգ էր տանում, որ Արևելքի եկեղեցիները չհափշտակվեն անօրեն հեթանոսների կողմից, այդ նույն ժամանակ շուտով հասավ նրա կյանքի վախճանը և օգնության գործը չարաչար խափանվեց:*

*Եվ նրա փոխարեն թագավորեց Մարկիանոս կայսրը. սա իր խրատատու վատթար ծառաների չնորհիվ, այն է՝ Անատոլ սպարապետի և Եղփարիոս Ասորու,— երկուսն էլ անարգ ու վատթար, միևնույն ժամանակ և անաստված մարդիկ,— նրանց կողմն անցնելով թագավորը՝ չկամեցավ ուշադրություն դարձնել հայերի միաբան ուխտին, որ իրենց ամբողջ ուժով ընդդիմադրել էին հեթանոսների չարությանը: Իսկ այս անարի մարդն ավելի լավ էր համարում իր դաշինքը պահել հեթանոսների հետ մարմնական խաղաղության համար, քան թե քրիստոնեության ուխտին պատերազմակից լինել: Այդ պատճառով էլ շտապեց, դեսպաններ ուղարկեց պարսից թագավորի մոտ նույն Եղփարիոսին և հաստատուն դաշն կնքեց նրա հետ՝ օգնություն ցույց չտալ հայոց զորքին ո՛չ զորքով և ո՛չ էլ զենքով ու ամեն տեսակ օժանդակությամբ:*

*Եվ երբ այս այսպես կատարվեց-պրծավ, և նրանց [հայերի] հույսը կտրվեց մարդկային օգնությունից, դարձյալ սուրբ եպիսկոպոսներն սկսեցին քաջալերել իրենց և հայոց զորքին: Թեպետև տեսնում էին իրենց սակավությունն ու երկու թագավորների միաբանությունը, բայց և այնպես ամենևին չէին վհատվում ու դողում, այլ նախկին ուխտադրության համաձայն խիզախում էին և ասում. «Պատրաստ ենք սպանելու և մեռնելու. Աստծու համար հեշտ է քիչ մարդկանցով շատերի գործ կատարել և անարգների միջոցով՝ մեծամեծ բաներ անել»:*

*Թեպետև Թագավոր չունեին իրենց առաջնորդ և ո՛չ էլ դրսից որևէ օգնական օտարներից, բայց բոլոր նախարարներն անձնական առաքինությամբ և սուրբ վարդապետների մխիթարությամբ իրենց բոլոր զորքերի հետ միասին ամեն մեկն իր տնից չտապով եկան, մի տեղ հավաքվեցին, նաև ուրիչ չատ հեծելազոր, որոնք Թագավորական տնից էին։*

*Եվ ամբողջ զորքը երեք գնդի բաժանեցին։*

*Առաջին գունդը տվին Ներպաչուհ Ռմբոսյանին և ուղարկեցին նրան երկիրը պահպանելու Ատրպատական աչխարհի սահմաններին մոտիկ։*

*Երկրորդ գունդը տվին Հայոց Վարդան զորավարի ձեռքը, որ անցնի Վրաց սահմանից Ճորա մարզպանի վրա, որ եկել էր Աղվանից եկեղեցիներն ավերելու։*

*Իսկ երրորդ գունդը հանձնեցին Սյունյաց Վասակ իչխանին, որն իր ներքին մտադրություններով հեռացած չէր հեթանոսների ուխտից։*

*[Նա] ընտրեց և իր հետ վերցրեց այնպիսի մարդիկ, որոնց հավատի թուլությունը գիտեր.*

| | |
|---|---|
| **Բագրատունյաց** | *իչխանին իր զորքով.* |
| **Խորխոռունյաց** | *իչխանին իր զորքով.* |
| **Ապահունյաց** | *իչխանին իր զորքով.* |
| **Վահևունյաց** | *իչխանին իր զորքով.* |
| **Պալունյաց** | *իչխանին իր զորքով.* |
| **Գաբեղենից** | *իչխանին իր զորքով.* |
| **Ուրծա** | *իչխանին իր զորքով։* |

*Եվ ուրիչ բազմաթիվ զորք էլ արքունի տնից իր կողմը գրավեց, նույնպես և ուրիչ տոհմից մի քանի սեպուհների։ Եվ խորամանկ խաբեությամբ դարան էր մտնում իր երկրի բերդերում, կեղծավորությամբ պատճառ բերելով, թե ճեպընթաց պիտի անցնի–հարձակվի պարսից զորքի վրա՝ Աղվանից երկրից նրանց հալածելու համար։*

*Իսկ նա [իր] ամրածածուկ թաքստոցից չտապով դեսպաններ ուղարկեց պարսից զորքերի մոտ, թե «Ահա քանդեցի Հայոց ուխտի միաբանությունը և երեք կողմերի վրա զորքը քանդելով բաժանեցի։ Առաջին գունդը հեռացրի Հերի և Զարևանդի կողմերը. երկրորդ գունդը իմ ձեռքի տակ է, որոնց թույլ չեմ տա որևէ վնաս հասցնելու արքունական զորքին։ Եվ էլի որքան պատերազմող մարդ որ կար այս աչխարհում, ցիրուցան արի այս երկրի զանազան կողմերը։ Իսկ երրորդ գունդը Վարդանի հետ Աղվանք ուղարկեցի՝ փոքրաթիվ և ոչ*

*թե բազմաթիվ: Համարձակ դուրս արի նրա առաջ և ամենևին մի՛ վախենա նրա դեմ պատերազմի ելնելուց. գիտեմ, որ պարտություն պիտի կրեն քո մեծ զորության առաջ»:*

*Այս բանը գրեց և հասկացրեց մարզպանին, որի անունը Սեբուխտ էր: Իսկ նա, երբ լսեց Վասակից այս բոլոր խրախուսանքները և ստուգելով համոզվեց, որ հայոց սպարապետը սակավաթիվ գնդով է գալիս նրա վրա, այլևս չմնաց ծորա կողմերում, այլ հավաքեց իր ամբողջ բազմաթիվ զորքը և չտապով անցավ Կուր անունով մեծ գետը և հանդիպեց նրան վրաց սահմաններին մոտիկ Խաղխաղ քաղաքի հանդեպ, որ աղվանների թագավորների ձմեռոցն էր: Անցավ սփռվեց իր ամբողջ զորքով, բանակ դրեց և դաշտի ամբողջ մեծությունը բռնեց. զինված ու լիովին սպառազեն դուրս եկան կռվելու հայոց զորքի դեմ:*

*Իսկ քաջ Վարդանը և նրա հետ գտնված ամբողջ զորքը, երբ տեսան հեթանոսների գնդի մեծ պատրաստությունը, նայեցին նաև իրենց սակավությանը. թեև թվով նրանցից շատ ավելի քիչ էին, բայց ամենևին չվախեցան նրանց մեծ բազմությունից: Հայերը խումբ կազմեցին ու հարձակվեցին, և աջ թևը ճեղքելով՝ ձախ կողմը գցեցին, բոլորին սրի ճարակ արին ամբողջ դաշտի վրա և փախցրին մինչև անտառի ամուր տեղերը՝ Լոփնաս գետի խոր ձորերի մոտ: Այստեղ Բաղասական թագավորի թագավորազներից ոմանք ետ դարձան, Հայոց նախարարներից մեկին ձիուց վայր գցեցին, Դիմաքսյան գնդից Մուշին սպանեցին և Գազրիկին վիրավորեցին:*

*Այնտեղ աչքը վեր բարձրացրեց Արշավիր Արշարունին, մռնչաց առյուծի պես և հարձակվեց վարազի նման, խփեց սատկեցրեց Լփնաց թագավորի եղբայր քաջ Վուրկին և նրա բազմաթիվ համհարզներին էլ նրա հետ սպանեց: Եվ այսպես առհասարակ յուրաքանչյուրն իր ախոյանին գետին էր գլորում: Եվ սաստիկ հանդուգն հարձակման պատճառով գետը թափածների թիվն ավելի շատ էր, քան թե ցամաքի վրա սրի անցրածներինը: Եվ ընկած դիակների բազմությունից գետի հստակ ջրերը արյուն դարձան, և նրանցից ոչ ոք չկարողացավ փրկվել և թաք կենալ դաշտերի խիտ անտառներում: Բայց թշնամիների զորականներից մեկն իր զենքերով միասին բարձրանալով ձիու մեջքին՝ անցավ մեծ գետը, մազապուր պրծավ պատերազմից՝ գույժ տարավ մնացած բուն բանակին, որոնք փախան գնացին մեծ Ճահաստանը:*

*... Դարձյալ ոչ պակաս քաջությամբ հարձակվեցին այն բերդերի և քաղաքների վրա, որ գրավել էին պարսիկներն Աղվանների աշխար-*

*հում, հզորապես մարտնչելով հրդեհում էին նրանց ամուր բերդերը և մոգերի այն խմբերը, որոնց պատրաստել-բերել էին երկրում գայթակղություն գցելու համար, ո՛ւր էլ գտնում էին ամուր-ամուր տեղերում, սրի ճարակ դարձնելով՝ թողնում էին երկնքի թռչուններին և երկրի գազաններին կերակուր: Այն տեղերը մաքրեցին բոլոր պիղծ զոհերից և եկեղեցիները փրկեցին-ազատեցին անտանելի նեղությունից:*

*Աղվանից նախարարներից ու բոլոր շինականներից շատերն էլ, որոնք Աստծու անվան համար ցիրուցան էին եղել Կապկոհ լեռների ամուր տեղերում, երբ տեսան այդ գործի հաջողությունը, որ Աստված կատարում էր հայոց զորագնդի միջոցով, նույնպես եկան-ժողովվեցին և խառնվեցին հայոց զորքի հետ և նրանց հետ միաբան ու հավասար մասնակցեցին քաջության գործին: Այնուհետև գնացին-արշավեցին Հոների պահակի[17] վրա, որ բռնությամբ գրավել էին պարսիկները. առան, քանդեցին պահակը և կոտորեցին ներսում բնակված զորքը և Դուռը հանձնեցին Վահանին, որ աղվանների թագավորների ցեղից էր: Եվ այս բոլոր քաջագործություններն անելիս՝ նրանցից ամենևին ոչ ոք չվիրավորվեց, բացի մեկ երանելուց, որ նահատակվեց մեծ պատերազմի մեջ:*

*Եվ տեղնուտեղը այն մարդուն, որին հանձնել էին Դուռը, հենց նրան էլ դեսպան ուղարկեցին Հոների երկիրը և Հոների երկրին գործակից ուրիշ շատ բարբարոս ազգերի մոտ՝ նրանց հետ բանակցելու և դաշն կնքելու, որ հաստատ մնան այդ միաբանության վրա: Իսկ նրանք, երբ այս բոլորը լսեցին, չտապով եկան-հասան այնտեղ և իրենց աչքով տեսան հաղթության գործը: Եվ չհապաղեցին երդումով դաշն կնքել օրենքով ու կարգով. ընդունեցին նաև քրիստոնյաների երդումը՝ հաստատ պահելու միաբանությունը նրանց հետ:*

*Երբ այս բանն ավարտեցին և իրենց համար մեծ ապահովություն ձեռք բերին, և դեռևս նույն վայրում տեղավորված էին հանգիստ կերպով, Հայոց աշխարհից մի գուժկան հասավ, ճակատը վիրավորված ու օձիքը պատառոտված [և պատմեց] ապստամբ Վասակի մասին. «Հեռացել է քրիստոնեության ուխտից և ավերել Հայոց աշխարհի շատ տեղերը, մանավանդ արքունի ձմեռոցները, որոնք զորքի կայաբաններն էին, Գառնին և Երամոնսը և Դրասխանակերտը՝ մեծ դաստակերտը, Վարդանաշատը և Օշական ամրոցը, Փառախոտը, Սարդյանքը, Ձողակերտ ավանը և Արմավիրի բերդը, Կուաշ ավանը, Արուճը, Աշնակը և ամբողջ Արագածոտնը, Արտաշատի նահանգը և նույնիսկ Արտաշատն ամբողջովին, ինչպես և նրա շուրջը գտնված բոլոր*

*գյուղերն ու ավանները՝ առել, ավերել և կրակ է տվել և ձեր բոլորի ընտանիքները փախցրել-հեռացրել է իրենց բնակությունից: Ձեռք է տվել նաև սուրբ եկեղեցիներին. տարել է նաև եկեղեցու սեղանի սուրբ անոթները. գերել է քահանաների ընտանիքներին, իսկ նրանց կապել ու բանտ է դրել. և ինքը ասպատակ սփռելով ու տարածելով ամեն կողմ՝ ամբողջ երկիրն ավերում է: Եվ այն գունդը, որ Ատրպատականի կողմերում էր, չկարողացավ օգնության ձեռք մեկնել Միջնաշխարհին: Իսկ այնտեղ մնացած զորքը՝ փախուստ տալով այդ անօրենից՝ քաշվել է երկրի մի ծայրը և դեռևս պահում է Քրիստոսի սիրո միաբանության ուխտը ձեզ հետ: Իսկ նրանք, ովքեր նրա հետ էին, ոմանք փախան ամեն մեկն իր տեղը, բայց ավելի բազմաթիվ են նրանք, ովքեր մոլորվեցին և հետևեցին նրա ամբարշտությանը»:*

*[Հայոց զորքը] խիստ շտապով չվեց այնտեղից՝ ... և [հայոց զորավարը] երեսուն օրվա մեջ ողջ ու առողջ հասցրեց հայրենի երկրի սահմանները:*

*Լուր հասավ ուրացյալ Վասակին և նրա հետ եղած իշխաններին Վարդանի զորախմբի արիության ու քաջության մասին Աղվանից աշխարհում, ինչպես նաև հոների միաբանվելու մասին: Դեռ միմյանց չէին հանդիպել, նա մի գիշերից օգուտ քաղելով՝ փախավ-ընկավ իր երկրի ամրոցները և այնպիսի տագնապի մեջ հեռացավ, որ Այրարատ գավառից վերցրած գերին ու ավարը, իրենն էլ ակամա վրան ավելացրած, թողեց ու փախավ:*

*Եվ որովհետև ձմեռ ժամանակը վրա էր հասել, և պաշարները թշնամիների գունդն ավարել էր, [Վարդանը] չկարողացավ ամբողջ զորքը մի տեղում պահել ու մատակարարել, այլ սփռեց-տարածեց երկրի զանազան գավառները՝ ձմեռը հանգստանալու համար: Պատվեր տվեց, որ կազմ ու պատրաստ լինեն գարնան պահին: Եվ ավագ նախարարների խմբից քչերին իրեն գործակից թողնելով՝ ուժեղացավ և գրավեց թագավորանիստ տեղերը:*

*Եվ գունդ-գունդ զորք էր ուղարկում Սյունյաց երկիրը, առնում ու ավերում էր շատ գավառներ. և այնպես նեղը լծեց [Վասակին] և նրա հետ եղած ամբողջ զորքին, որ սովի վտանգից անխտիր սատկած էշերի և ձիերի միս էին ուտում: Եվ շատ հարվածներ էր հասցնում ուրացյալին:*

*... Երբ Աստծու երկյուղածներն այս ամեն հաջողություններն ունեցան, բոլոր եպիսկոպոսներն ու երեցները հրաման արձակեցին ժողովրդին՝ ամբողջ Քաղոց ամիսը՝ պահքով ու աղոթքով խնդրվածք անել Աստծուն, և պատերազմների հաղթության տոնը խառնել*

*Քրիստոսի Հայտնության սուրբ տոնին, որպեսզի այս մեծ հիշատակն անխափան մնա աստվածային անանց տոնի հետ:*

*... Եվ նախկին բռնված պարսիկներից մեկին [կապանքներից] ազատեցին ու բերին նախարարների առաջ. նրա հետ խոսում էին և ցույց էին տալիս այն բոլոր վնասները, որ եղան. թե՛ երկրների ավերվելը, թե՛ արքունի զորքերի ջարդվելը և թե՛ այն բաները, որ դեռ պետք է լինեին առաջիկայում: Եվ երբ այս բոլորը լրիվ հասկացրին նրան, երկու կողմերն էլ՝ թե՛ առաքինիները և թե՛ հետ կացածները՝ միաբանվեցին ու ամբաստանեցին, թե ինչպե՛ս զուր ու անտեղի ստիպեց նրանց հայրենի կրոնից հրաժարվել, և ապստամբ Վասակի խաբեությունը, որը Թագավորին խաբեց՝ որպես թե հայերը հանձն են առնում մոգությունը, մինչդեռ ոչ ոք նրան խոսք չէր տվել, այլ նա ինքն իրենից քծնելով խաբել էր:*

*Երբ այս ամենը լիովին հասկացրին, նրան պատգամավոր ուղարկեցին [Թագավորի մոտ]: Արդ, այն մարդը գնալով ձմեռոց տեղը[18], այս ամենը պատմեց Թագավորին, չարժեց-դողացրեց նրան, և նա իր բոլոր ուժը կորցրեց-թուլացավ: Երբ իր մոտ հասած վերջին պատգամավորից ստուգեց ու հաստատեց ամեն ինչ, իր գործերի անհաջողության ամբողջ մեղքը խորհրդակիցների վրա գցեց: Եվ այն ժամանակ մարեց նրա բոցավառ բորբոքումը, որովհետև փակվեց չար խրատատուների բերանը, որոնք անդադար հորդորում էին նրան դժնդակ գործեր կատարել: Խոնարհվեց իր բարձր հպարտությունից և վայրենացած սիրտը մարդկային բնության փոխարկեց. նայեց ու տեսավ, որ ինքը լի է տկարությամբ. հասկացավ, որ չի կարող կատարել այն ամենն, ինչ որ կամենում է. այդ պատճառով էլ ետ կացավ այն հանդուգն հարձակումից և վերջ տվեց մոլեգնոտ գոռում-գոչումին: Եվ Թագավորը մեղքն ու հանցանքը գցում էր մոգպետի ու մոգերի վրա: Եվ բոլոր վզրուկներն ու պատվավոր նախարարները, որ ականջ էին դնում Թագավորի հեղհեղուկ խոսքերին, ամաչելով գլուխները կորացնում էին և գետնին էին նայում, և չէին կարողանում գլուխները վեր բարձրացնել:*

*Բայց նրանցից մի քանիսը Թագավորին հաճոյանալու համար այսպես ասացին. «Մի՛ սրտնեղիր ու տագնապիր ինքդ քո մեջ և մի՛ կոտրիր մեր բոլորիս սիրտը. գուցե գործերին վերջ տալու համար մի հեշտ հնարք գտնվի: Սիրտդ լայն պահիր և համբերությամբ թույլ տուր այդ մարդկանց նորից քրիստոնեական կրոնը պաշտելու, և դրանց միջոցով ապստամբներին հավանության կբերես»:*

*Այս խոսքը հաճելի եղավ Թագավորին. և անմիջապես իր առջև*

*կանչեց իր զորքի մեջ գտնված ամեն ազգի պատկանող քրիստոն-յաներին, որոնց բռնությամբ արգելել էր, որ ոչ ոք չհամարձակվի իր ներկայությամբ Աստծուն պաշտել: Որովհետև ովքեր ընդդիմացան, չարչարեց և արգելեց նրանց հայտնի պաշտամունք կատարել, ոմանց էլ ակամա երկրպագել տվեց արեգակին և բոլոր զորականներին տրտմության ու սգի մեջ գցեց:*

*Իսկ այն օրը նորից հրամայեց, որ համարձակորեն առաջվա պես հաստատ մնան քրիստոնեական կրոնի մեջ: Իսկ ովքեր հանցավոր էին, չէին կամենում անմիջապես, առանց մեծ ապաշխարության, գալ ու խառնվել քրիստոնեության շարքին, թագավորը հրամայում էր այդպիսիներին բռնությամբ վերցնել և տանել իրենց եկեղեցին: Եվ երեցներին էլ իրավունք տվեց, որ ինչպես գիտեն, իրենց կարգի հա-մեմատ վարվեն: Ում ռոճիկը կտրել էր, կրկին սահմանեց ամեն մեկին, և ում բարձն ու աստիճանը, խլել էր, հրամայեց վերադարձնել և նրանց չէր արգելում ամեն օր արքունիք մտնել և ամեն բան, ինչ և ինչպես առաջ կարգված էր, կրկին այնպես կարգավորեց: Խոնարհ-վում և սիրով խոսում էր նրանց հետ նախկին սովորության համա-ձայն:*

*Եվ երբ այս ամենն արեց ու կարգադրեց, նրանց ներկայությամբ թողության հրովարտակներ ուղարկեց իր իշխանության ու տերու-թյան բոլոր կողմերը քրիստոնյաների վերաբերմամբ:*

*«Եթե մեկը կապանքի մեջ է, թող արքունի հրամանով արձակվի և եթե մեկի գույքը հափշտակված է, թող վերադարձվի: Այդպես էլ հո-ղերը – թե՛ հայրական, թե՛ պարգև ստացած և թե՛ փողով գնած – եթե որևէ մեկը խլել է, հրամայեցինք, որ վերադարձվեն»:*

*Եվ երբ նրանց տեղեկացնում էր այս ամենը, նրանցից խնդրում էր հավատարիմ վկայություն ուղարկել Հայոց երկիրը, և երդումով ուխտում էր նրանց առաջ՝ իր բոլոր մեծամեծների հաստատությամբ, թե «Ամենևին մտքովս չեմ անցկացնի վրեժխնդիր լինել: Ինչպես առաջները ճշմարտությամբ պահում էիք ձեր կրոնը, այսուհետև ավելի՛ պահեցեք. միայն թե ծառայությունից դուրս մի՛ գաք»:*

*Այս ամենը գրում և ցույց էր տալիս թե՛ Հայոց երկրին և թե՛ ուրիշ շատ աշխարհների, որոնք քրիստոնեական կրոնին էին հետևում: Իսկ ինքը ծածուկ խորամանկությամբ շտապով դեսպաններ ուղարկեց Մարկիանոս կայսեր մոտ: Եվ երբ ստուգեց-իմացավ, որ հռոմները հրաժարվել են քրիստոնյաներին օգնական զորքով և որևէ այլ բանով օժանդակելուց, նորից դարձավ իր նախկին մոլար կարծիքին:*

***ՉՈՐՐՈՐԴ ԵՂԱՆԱԿ***

*... Եվ անօրեն Միհրներսեհը, քանի որ առաջուց ստույգ գիտեր Վասակի ամբարշտությունը, այն ժամանակ էլ մարդ ուղարկեց և նրան իր մոտ կանչեց: Նա էլ, քանի որ սկզբից անջատվել ու բաժանվել էր հայերի միաբանությունից, եկավ-ներկայացավ նրան. և ապացուցում էր իր հավատարմությունը և հայերի անիրավ ապստամբությունը: Դեռ այնպիսի բաներ էլ ավելացրեց ու պատմեց, որ հայերը բնավ չէին արել, և կամենում էր ընտանեբար հաճոյանալ անօրենին:*

*Իսկ Միհրներսեհն արտաքուստ պատիվ տվեց և երկրավոր մեծամեծ պարգևներ առաջարկեց նրան: Եվ խոստացավ նրան ավելի մեծ իշխանություն, քան թե ուներ, իբր թե նրան վայել է թագավորական վիճակի հասնել միայն թե այս գործի հնարը գտնի, թե ինչպես պետք է քանդել հայոց ուխտի միաբանությունը և թագավորի կամքը կատարվի այն երկրում:*

*Եվ Վասակը շատերին դուրս հանեց Քրիստոսի գնդից և խառնեց դևերի գնդին: Շատ ուրիշ տեղեր էլ գողաբար սողոսկեց և օձի նման ներս մտավ ամրացածների մեջ. և ցանկապատի մեջ ճեղքվածք առաջացնելով՝ հայտնապես հափշտակեց-առավ ու դուրս հանեց բազմաթիվ ազատների և է՛լ ավելի բազմաթիվ շինականների, ինչպես և ուրիշ ոմանց, որոնք միայն անունով էին քահանա:*

*Նրա գործակիցների անունները սրանք են.*

| | |
|---|---|
| *Ռշտունյաց* | **Արտակ** *անունով իշխանը,* |
| *Խորխոռունյաց* | **Գադիշո** *անունով իշխանը,* |
| *Վահևունյաց* | **Գյուտ** *անունով իշխանը,* |
| *Բագրատունյաց* | **Տիրոց** *անունով իշխանը,* |
| *Ապահունյաց* | **Մանեճ** *անունով իշխանը,* |
| *Գաբեղենից* | **Արտեն** *անունով իշխանը,* |
| *Ակեայի* | **Ընջուղ** *անունով իշխանը,* |
| *Ուրծի* | **Ներսեհ** *անունով իշխանը,* |
| *Պալունյաց մյուս մասի* | **Վարազշապուհ** *անունով իշխանը,* |
| *Ամատունյաց մի սեպուհ* | **Մանեն** *անունով:* |

*Եվ ուրիշ շատ ազատ մարդիկ արքունի տնից, որոնց ոստանիկ են անվանում:*

*Եվ իր ամբողջ երկիրը լիովին ապստամբեցրեց և ուրանալ տվեց ո՛չ միայն բազմաթիվ աշխարհականների, այլև շատերին եկեղեցու սուրբ ուխտից, մանավանդ սուտ երեցների միջոցով, որոնց ձեռքով*

*գործում էր այն չարիքները. այն է՝ մի երեց Զանգակ անունով, մի երեց Պետրոս անունով, մի սարկավագ Սահակ անունով, մի սարկավագ Մուշի անունով. սրանց ուղարկում էր անմեղ մարդկանց մոտ, խաբում էր ու մոլորեցնում. երդվում էին սուրբ Ավետարանով և ասում. թե «Թագավորի կողմից ամենքին պետք է չնորհվի քրիստոնեությունը»: Եվ այսպես խորամանկ խաբեությամբ շատերին անջատում էին սուրբ միաբանությունից, անում ու խառնում էին ուրացողների խմբերին:*

*Նա ժողովեց բոլոր գայթակղվածներին և մի մեծ զորագունդ կազմեց. նրանցից շատերի անունները մեկ առ մեկ գրեց և ցույց տվեց մեծ հազարապետին, ինչպես և իր արիությունն ու քաջությունը, մեծապես պարծենալով, թե ինչպես սովորեցրեց մոլար խաբեությանը. և այնպես ցույց տվեց, թե հայոց զորքը բաժան-բաժան է եղել և պառակտված է:*

*Եվ երբ այս բոլոր չարիքները հաջողվեցին նրան, քանդեց նաև Վրաց աշխարհի միաբանությունը հայերից, Աղվանիցն էլ չթողեց առաջ շարժվել. նույն ձևով ետ պահեց նաև Աղձնյաց երկիրը: Թուղթ գրեց նաև Հունաց երկիրը Վասակ անունով մի մարդու այն Մամիկոնյաններից, որոնք հույների ծառայության մեջ էին գտնվում, ցույց տալով [ամեն ինչ] հեղաշրջված և սուտ ու սխալ: Այս թշվառության ժամանակ այն մարդը Ստորին Հայքի[19] սպարապետ էր և հոռոմների զորքերին հավատարիմ մի անձ պարսից սահմանի վրա, և իր գործերով Աստծու օրենքներին հակառակ գործող մարդ էր: Այս Վասակն իրեն գործակից գտավ այն Վասակին այն մեծամեծ չարիքների մեջ, որի համար երկուսը միաբանվեցին:*

*Նա գրում և չարունակ ապացուցում էր, իբր թե ամբողջ Հայաստանը միաբանվել է իր հետ:*

*... Եվ նրա մեծ չարության համաձայն էլ առավելապես ժամանակը հաջողեցրեց նրա գործերը, որովհետև հայոց զորքին դրսից ոչ մի օգնող չեղավ, բացի այն հոներից, որոնց հետ խոսք էին կապել: Սակայն նրանց դեմ էլ հավաքեց Արյաց բազմաթիվ հեծելազորը, արգելեց և փակեց նրանց ելքի ճանապարհը. որովհետև նա ամենևին հանգիստ չէր տալիս պարսից թագավորին, այլ ուղարկում-կանչում էր բազմաթիվ զորքեր ծորա պահակը, հավաքում էր այնտեղ Վրաց աշխարհի ամբողջ զորքը, ինչպես և Լփնաց և ծղբաց զորքերը. Վատը, Գավը ու Գղվարը, Խրսանը և Հեճմատակը, Փասխը, Փոսխն ու Փյուքվանը և Թավասպարանի[20] ամբողջ զորքը, լեռնայինն ու դաշտայինը և լեռների բոլոր բերդերինը: Ոմանց գույքով, մեծ պարգևներով և ար-*

*քունի գանձարանից առատ-առատ պարգևներ բաշխելով, ոմանց էլ Թագավորի հրամանով սպառնալով՝ տագնապի մեջ էր գցում:*

*Երբ այս բոլոր չարագործությունները Միհրներսեհը տեսավ նրա մեջ, իր անձից ավելի հույսը նրա վրա դրեց: Հարցնում և ստուգում էր, թե ընդամենը քանի՞ մարդ կա Հայոց աշխարհում Վարդանի գնդի մեջ: Երբ նրանից լսեց, թե վաթսուն հազարից ավելի են, նաև տեղեկություններ պահանջեց յուրաքանչյուրի քաջության մասին, կամ թե՝ նրանցից քանի՞ հոգի են սպառազեն, և կամ քանի՞ հոգի են առանց զենքի լոկ աղեղնավորներ. նույնպես և վահանավոր հետևակների մասին:*



**Վարդան Մամիկոնյան**
**(հատված Սկևռայի մասնատուփից. 1293 թ.)**

*Եվ երբ լսեց բազմության թիվն ու համարը, է՛լ ավելի չտապեց իմանալ, թե քանի՞սն են քաջ զինվորների պարագլուխները, որպեսզի նրանցից յուրաքանչյուրի դեմ երեքը պատրաստի, բացի բոլոր մնացած բաներից: Մինչև անգամ նրանցից ամեն մեկի դրոշների մասին էլ էր տեղեկություն հարցնում, և թե զորքը քանի՛ գնդի են բաժանելու և նրանցից ովքեր պետք է հրամանատար լինեն, և ո՛ր զորագլուխը ո՛ր կողմից պետք է պատերազմի մեջ մտնի, և ի՛նչ են յուրաքանչյուր համհարզների անունները, և քանի՛ փողհար պետք է ձայն արձակեն գնդի մեջ: Արդյոք [ցցապատնեշներով ու խրամով շրջապատված] բանա՞կ պիտի դնեն, թե արձակ դաշտում տեղավորվեն. ճակատ առ ճակա՞տ պիտի գործեն, թե համագունդ մի տեղի վրա պիտի գրոհ տան: Նրանցից ո՛րը պետք է տատանման մեջ մնա և կամ նրանցից ո՛րը ջանք թափի՝ իր անձը մահվան ենթարկելով:*

*Եվ երբ այս ամենի մասին տեղեկացավ նրանից, կանչեց բոլոր զորագլուխներին, նրա ներկայությամբ բոլորին հրաման տվեց, որ բոլորը կատարեն նրա հրահանգները: Եվ ամբողջ զորքը զորագլուխների հետ միասին հանձնեց ավագներից մեկին, որի անունը Մուշկան Նիսալավուրտ էր:*

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԵՂԱՆԱԿ

*Որովհետև մեր մեծ Վարդանը տեսավ իր աշխարհի երկպառակությունը, ամենևին չվախեցավ թերահավատությամբ: Թեպետև ստուգեց-իմացավ դեռևս իրեն միաբանվածներից շատերի երկմտությունն էլ, այնուամենայնիվ, ինքն իրեն սիրտ տվեց և իր զորքերին էլ քաջալերեց, քանի որ հենց ինքը դեռ գրաված էր պահում թագավորանիստ տեղերն այն նախարարների հետ միասին, որոնք չանջատվեցին սուրբ ուխտից: Հրաման տվեց ամբողջ զորքին հավաքվել Արտաշատ քաղաքը. այն ետ կացածների փոխարեն, որոնք գնացին Սյունյաց իշխանի հետևից, կարգեց նրանց եղբայրներին կամ որդիներին կամ եղբորորդիներին և ամեն մեկին տվեց նրանց զորքերը, որովհետև ամբողջ երկիրը դեռ նրա իշխանության տակ էր:*

*Եվ նրանք բոլորը շտապով եկան-հասան պատերազմի վայրը, յուրաքանչյուրն իր զորքով ու ամբողջ պատրաստությամբ, նրանք և ովքեր ի բնե հաստատ էին մնացել իրենց տեղում:*

**Ներշապուհ Արծրունին,**
**և Խորեն Խորխոռունին,**
**և ինքը սպարապետը,**
**և Արտակ Պալունին,**
**և Վահան Ամատունին,**
**և Վահևունյաց Գյուտը,**
**և Թաթուլ Դիմաքսյանը,**
**և Արշավիր Արշարունին,**
**և Շմավոն Անձավացին,**
**և Տաճատ Գնթունին,**
**և Ատոմ Գնունին,**
**և Խոսրով Գաբեղյանը,**
**և Կարեն Սահառունին,**
**և Հմայակ Դիմաքսյանը,**
**և էլի մի ուրիշ Դիմաքսյան՝ Գազրիկը,**
**և Ներսեհ Քաջբերունին,**
**և Փարսման Մանդակունին,**
**և Արսեն Ընձայացին,**
**և Այրուկ Սղկունին,**
**և Վրեն Տաշրացին,**
**և Ապրսամ Արծրունին,**
**և արքունի Շահխոռապետը,**

**և Խուրս Սրվանձտյանցը,**
**և Քողյանները, և Ակեացիները, և Տրպատունիները,**
**և Ռշտունիների զորքը, և արքունի բոլոր գործակալ-ներն ամեն մեկն իր զորքերի հետ միասին:**

*Սրանք բոլորը համախմբված հասան պատերազմի գործի համար Արտազու դաշտը, և նրանց ընդհանուր թիվը եղավ վաթսունվեց հազար մարդ ձիավոր և հետևակ:*

*Նրանց հետ եկան Սուրբ Հովսեփը, Սուրբ Ղևոնդ երեցը և բազմաթիվ այլ քահանաներ և է՛լ ավելի բազմաթիվ [հոգևոր] պաշտոնյաներ: Որովհետև նրանք էլ ամենևին չվախեցան պատերազմի գալ նրանց հետ, քանի որ ո՛չ մարմնական էին համարում այն կռիվը, այլ հոգևոր առաքինության կռիվ. ցանկանում էին իրենք էլ քաջ զինվորներին մահակից լինել:*

*Սպարապետը նախարարների միաբանությամբ սկսեց խոսել զորքի հետ և ասաց.*

*«Շատ պատերազմներ եմ մղել ես, և դուք էլ ինձ հետ. տեղ կար, որ քաջաբար հաղթեցինք թշնամիներին, տեղ էլ կար, որ նրանք հաղթեցին մեզ. բայց ավելի շատ այն է, որ հաղթող ենք դուրս եկել և ոչ թե հաղթված: Բայց այդ բոլորը մարմնավոր պարծանք էր, որովհետև անցավոր թագավորի հրամանով էինք մարտնչում: Ով փախչում էր, վատանուն էր երևում աշխարհում և նրանից անողորմ մահ էր ստանում, իսկ ով քաջությամբ առաջ էր ընկնում, քաջ անուն էր ժառանգում և մեծամեծ պարգևներ ստանում անցավոր ու մահկանացու թագավորից: Եվ մեզնից ամեն մեկս էլ ահավասիկ շատ վերքեր ու սպիներ ունենք մեր մարմինների վրա, և ուրիշ շատ քաջություններ էլ են եղել, որոնց համար և մեծամեծ պարգևներ են ստացվել: Անարգ և անօգուտ եմ համարում այդ քաջությունները և ոչինչ բաներ՝ այդ բազմաթիվ պարգևները, որովհետև բոլորն էլ ոչնչանալու են:*

*«Իսկ արդ՝ եթե մահկանացու հրամանատուի համար այնպիսի քաջ գործեր էինք կատարում, ինչքա՜ն ավելի ևս [պետք է կատարենք] մեր անմահ թագավորի համար, որ տերն է կենդանիների և մեռելների և բոլոր մարդկանց դատելու է իրենց գործերի համեմատ: Չէ՞ որ եթե խիստ շատ ապրելով ծերանամ, միևնույն է՝ այս մարմնից պետք է բաժանվենք, որպեսզի մտնենք կենդանի Աստծու մոտ, որից այլևս չպետք է բաժանվենք:*

*«Արդ, աղաչում եմ ձեզ, ո՛վ իմ քաջ նիզակակիցներ. մանավանդ որ ձեզանից շատերը քաջությամբ ինձնից ավելի լավ եք և հայրենական գահի պատվով՝ ավելի բարձր. բայց երբ ձեր հոժար կամքով*

*ինձ կարգեցիք ձեզ առաջնորդ և զորագլուխ, թող իմ խոսքերն ախորժալուր և բաղձալի թվան մեծերիդ ու փոքրերիդ ականջներին: Ձերկնչենք ու չվախենանք հեթանոսների բազմությունից և ո՛չ էլ մահկանացու մարդու ահռելի սրի դեմ թիկունքներս դարձնենք. որպեսզի եթե Տերը հաղթությունը մեր ձեռքը տա, ոչնչացնենք նրանց զորությունը, որպեսզի բարձրանա ճշմարտության կողմը, իսկ եթե հասել է ժամանակը մեր կյանքը սուրբ մահով ավարտելու այս պատերազմում, ընդունենք ուրախ սրտով, միայն թե արիության ու քաջության մեջ վախկոտություն չխառնենք:*

*«Մանավանդ ես չեմ մոռացել և հիշում եմ, թե ինչպես ես և ձեզանից ոմանք այն ժամանակ անօրեն իշխանին խաբեցինք-մոլորեցրինք, ինչպես մի անպիտան մանուկ տղայի, երբ երեսանց նրա ամբարիշտ կամքն իբր կատարեցինք, բայց Տերն ինքը վկա է մեզ, թե ծածուկ մտադրություններով ինչպե՛ս անբաժան ենք մնացել նրանից: Այս դուք ինքներդ էլ գիտեք, որ հնարներ էինք փնտրում ազատելու մեր սիրելիներին, որոնք մեծ նեղության մեջ էին, որպեսզի նրանց հետ միասին մարտի մեջ մտնելով՝ կռվենք անօրեն իշխանի դեմ հայրենի աստվածատուր օրենքների համար: Եվ երբ նրանց չկարողացանք որևէ կերպ օգնել, թող անհնար լինի, որ մարմնավոր սիրո համար Աստծուն մարդկանց հետ փոխանակենք:*

*Եվ ահա եկել-հասել է ժամանակը, որ ամեն մի կեղտ կոչված բան հեռացնենք մեզանից: Այն ժամանակ իբրև մի վշտալից սգավոր՝ հոգով ու մարմնով տրտմած էինք, այսօր երկուսով էլ զվարթացած ու զգաստացած՝ առհասարակ խելամիտ ենք դարձել. որովհետև բարեբար տիրոջն էլ տեսնում ենք մեզ հետ իբրև առաջնորդ. մեր զորավարը մարդ չէ, այլ բոլոր մարտիրոսների զորագլուխը: Վախը թերահավատության նշան է. թերահավատությունը մենք վաղուց ենք մերժել մեզանից. նրա հետ թող վախն էլ փախչի մեր մտքերից ու խորհուրդներից»:*

*Առաքինի զորավարն այս ամենը խոսեց ամբողջ բազմության առաջ. դարձյալ և նրանցից սրան-նրան ծածուկ քաջալերում էր ու սիրտ տալիս և բոլոր պակասություններն ու թերությունները լրացնում: Զորականներից ո՛րը ոչինչ չուներ, հոգում էր իր սեփականությունից և ընկերներից. ով զենք չուներ, զենք էր հայթայթում նրան, ում զգեստ էր պետք, զգեստ էր հագցնում, և ում ձի էր պետք, ձի էր տալիս: Եվ առատ պարենով ուրախացնում էր բոլորին, և ինքն իրեն զվարթ էր ցույց տալիս ամենքին: Եվ պատերազմական կարգի համաձայն՝ քաջ տղամարդկանց հիշատակության արժանի գործերը չարունակ կրկնում էր նրանց առաջ:*

*... Այս պատմում էր և տեղնուտեղը դաշտում տեղավորում զորքը և բոլոր կողմերից հետզհետե կարգավորում այրուձին:*

*Մի քանի օրից հետո պարսից զորագլուխն առաջ խաղաց ամբողջ հեթանոս բազմության հետ. եկավ-հասավ Հայոց երկիրը՝ Հեր և Զարևանդ գավառը: Այնտեղ՝ գավառում կանգ առնելով, բանակ դրեց, փոս փորեց, պատնեշ շինեց, ցցապատերով փակեց և ամեն պատրաստությամբ ամրացրեց ինչպես քաղաք: Նրա զորքերից մեծաթիվ գունդ բաժանվեց, ասպատակելով արշավեց և կամենում էր բազմաթիվ գավառներ կողոպտել:*

*Երբ այդ բանը լսեց հայոց զորքը, բոլոր զորականների միջից ընտրեցին Ամատունյաց ցեղից մի սեպուհի Առանձար անունով, որ իմաստությամբ ու քաջությամբ լցված մի մարդ էր: Սա երկու հազարով դուրս եկավ նրա դեմ, ջարդեց-սատկեցրեց նրա գնդից շատերին, իսկ մնացածներին փախցրեց-հասցրեց նրանց բանակը: Իսկ ինքը ողջ և առողջ վերադարձավ, և այն օրը մեծ ուրախության տոն եղավ հայոց զորքի համար:*

*Ուրացյալ Վասակը մի անգամ էլ սկսեց իր առաջին կեղծավորության համեմատ հնարներ գործ դնել. վերևում հիշված սուտ երեցների հետ շրջում էր, նրանց միջոցով արքայի կողմից պատգամներ էր հայտնում և երդմամբ հավատացնում էր, որ կարող են նորից քրիստոնեությունը պաշտել:*

*Եվ այս բանը շատ օրեր կատարելով՝ չկարողացավ միաբանությունը քանդել, մանավանդ եկեղեցու սուրբ ուխտը, որ զորքից հեռացած չէր:*

*Ինչպես երանելի Ղևոնդ երեցը հրաման առնելով իր սուրբ ընկերներից՝ մեծ Հովսեփից և բոլոր մեծամեծներից, քահանաներից և զորագլուխներից, բաց արեց իր բերանը և բարձր ձայնով [ճառ] ասաց [զորքի] պատգամավորների առաջ:*

*Եվ սեղան կանգնեցնելով՝ ամենասուրբ խորհուրդը կատարեցին. պատրաստեցին նաև ավազան, և եթե զորքի բազմության մեջ չմկրտված մարդ կար, ամբողջ գիշերը մկրտեցին. և առավոտյան սուրբ հաղորդություն ընդունեցին և այնպես լուսազգեստ դարձան, ինչպես տերունական մեծ Սուրբ Զատկին:*

*Եվ զորքի ամբողջ բազմությունը մեծ զվարճությամբ և սաստիկ ուրախությամբ աղաղակեց. ևասում են. «Թող մեր մահը արդարների մահվան հետ հավասարվի և մեր արյունը թափվելը՝ սուրբ մարտիրոսների արյան հետ. Թող աստծուն հաճելի լինի մեր կամավոր զոհաբերությունը և իր եկեղեցին թող հեթանոսների ձեռքը չմատնի»:*

*Սրանից հետո, երբ պարսից բանակի զորավարը տեսավ, որ մեջ-տեղն էլ պատգամավոր չմնաց նրանց խաբելու համար, և իր հույսն ու ակնկալությունը կտրվեց նրանց բաժան-բաժան անելու անքակ-տելի միաբանությունից, այն ժամանակ իր առջև կանչեց անօրեն Վասակին և նրա հետ եղած Հայոց աշխարհի բոլոր ուրացած իշխան-ներին հարցափորձ արեց նրանց և նրանցից սովորում էր հաղթու-թյան հնարագիտությունը: Եվ երբ տեղեկացավ ամեն մեկի քաջու-թյունները, կանչեց նաև իր ձեռքի տակ եղած զորագլուխներից չա-տերին և հրամայեց իր առաջ բերել փղերի երամակները. գունդ-գունդ բաժանեց այդ գազաններին և ամեն մի փղի մոտ երեք հազար սպառազեն մարդ դրեց, բացի մնացած ամբողջ զորքից:*

*Արքունի հրամանով խոսում էր նաև մեծամեծների հետ և ասում. «Ամեն մեկդ հիշեցեք մեծ թագավորի պատվերը և նպատակ դրեք քաջության անուն հանել. մահը գերադասեցեք, քան թե վախկոտ կյանքը: Մի՛ մոռանաք այն յուղը, պսակը, ուրերն ու առատաձեռն պարգևները, որ շնորհվում են ձեզ արքունիքից: Ամեն մեկդ գավառ-ների տեր եք և շատ իշխանություն ունեք. դուք ինքներդ գիտեք Հա-յոց աշխարհի քաջությունը, և ամեն մեկի անվեհերությունը. գուցե պարտություն կրելով՝ կենդանի-կենդանի զրկվեք այն մեծ կյանքից, որ ունենալու եք: Հիշեցե՛ք ձեր կանանց և որդիներին, հիշեցե՛ք ձեր սիրելի բարեկամներին. գուցե ոտնահար լինիք արտաքին թշնամինե-րից և ներքին սիրելիների հետ միասին ողբաք»:*

*Հիշեցնում էր նրանց նաև բազմաթիվ փախած ընկերակիցներին, որոնք թեև պատերազմից փրկվեցին, բայց սրով ստացան իրենց մահվան պատիժը. նրանց տղաներն ու աղջիկները և ամբողջ ընտա-նիքը տուն ու տեղից զրկվեցին, և հայրենական բոլոր գավառները խլվեցին նրանցից:*

*Ասում էր այս բանը և սրանից էլ ավելի էր սաստկացնում արքու-նական հրամանը: Կարգավորեց ամբողջ զորքը և ճակատը տարա-ծեց-երկարացրեց մեծ դաշտի երկարությամբ: Եվ ամեն մի գազանի աջ ու ձախ կողմը երեքական հազար սպառազեն պատրաստեց և ամենաընտիր քաջ զինվորականներին իր շուրջը ժողովեց. և այսպես Մատյան գունդն*[21] *ամրացրեց ինչպես մի հզոր աշտարակ և կամ մի անմատչելի բերդ: Նշաններ բաշխեց, դրոշներ արձակեց և հրամայեց, որ մեծ փողի ձայնին պատրաստ լինեն: Իսկ Ապարհացի գունդը և Կատշաց, Հոնաց և Գեղաց գնդերը և էլի ուրիշ բազմաթիվ ընտիր-ըն-տիր զորականների մի տեղ ժողովեց և պատվեր տվեց իր զորքերի աջ կողմում պատրաստ լինել ընդդեմ հայոց զորավարի:*

*Իսկ քաջ Վարդանն առաջ գալով՝ հարցափորձ արեց մեծամեծներին և բոլորի տված խորհրդի համաձայն զորագլուխներ նշանակեց:*

*Առաջին զորամասը հանձնեց **Արծրունյաց իշխանին** և նրան նիզակակից կարգեց **Մոկաց մեծ իշխանին**. և ուրիշ բազմաթիվ նախարարների այս երկուսին նիզակակից նշանակեց, և զորամասի ամբողջ բազմությունն այս ու այն կողմից օգնական տվեց նրանց:*

*Երկրորդ զորամասը հանձնեց **Խորեն Խորխոռունուն**, և նրան նիզակակից կարգեց **Ընծայինին**[22] և **Ներսեհ Քաջբերունուն**:*

*Երրորդ զորամասը հանձնեց **Թաթուլ Վանանդացուն** և նրան նիզակակից կարգեց **Տաճատ Գնթունուն**, և շատ քաջ մարդիկ էլ այս ու այն կողմից օգնական տվեց նրանց:*

*Ինքը վերցրեց չորրորդ զորամասը և իրեն նիզակակից՝ քաջ **Արշավրին** և իր հարազատ եղբայր **Համազասպյանին**:*

*Այսպես կարգավորեց և ճակատ կազմեց՝ սփռելով դաշտի ամբողջ երեսին, Արյաց զորքի դեմուդեմը, Տղմուտ գետի ափին:*

*Եվ երբ այս այսպես պատրաստվեց, երկու կողմերն էլ սրտմտությամբ և մեծ բարկությամբ գայրացան և գազանացած զորությամբ միմյանց վրա հարձակվեցին. երկու կողմերի աղմուկն ու աղաղակը ճայթում էր ինչպես իրար խառնված ամպերի միջից, և ձայների դղրդյունը շարժում էր լեռների քարանձավները: Բազմաթիվ սաղավարտներն ու զրահապատված զորականների զենքերը փայլում էին ինչպես արևի ճառագայթների շողեր: Նաև բազմաթիվ սուսերների շողալուց և բազմախուռն նիզակների ճոճվելուց կարծես ահագին կրակ էր թափվում երկնքից: Որովհետև ո՞վ կարող է պատմել ահավոր ձայների մեծ իրարանցումը, և թե ինչպե՛ս վահանավորների թնդյունն ու աղեղների լարերի ճայթյունն առհասարակ խլացնում էին բոլորի ականջները:*

*Այնտեղ պետք էր տեսնել, թե ի՛նչ մեծ տագնապ և անչափ իրարանցման սրտնեղություն կար երկու կողմերում էլ, երբ հանդուգն հարձակումով իրար էին բախվում. որովհետև թանձրամիտները հիմարանում էին, և վախկոտները վհատվում. քաջերը խիզախում էին, և անվեհեր կտրիճներն աղաղակում: Եվ ամբողջ բազմությունն իրար գլխի խմբվելով՝ գետն ամեն կողմից փակեցին, և գետն [անցնելու] դժվարությունից վախեցած պարսից զորքն սկսեց իր տեղում վխտալ: Իսկ հայոց զորքն անցավ գետը, և ձի նստած մեծ զորությամբ հարձակվեց: Ուժգին թափով իրար զարկվելով՝ երկու կողմից էլ բազմաթիվ վիրավորներ գետին ընկած թպրտում էին:*

*Այս մեծ տագնապի մեջ դեպի վեր նայեց քաջ Վարդանը և տեսավ,*

*որ պարսից զորքի ընտիր-ընտիր քաջ զորականները Հայոց զորքի ձախ կողմն ընկճեցին. նա մեծ ուժով հարձակվեց այն տեղը և պարսից զորքի աջ թևը ջարդելով՝ քշեց գազանների[23] կողմը և չուրջը պտտելով կոտորեց մինչև նույն տեղը: Եվ այնպիսի տագնապ ու խռաբանցում գցեց նրանց մեջ, որ մինչև անգամ Մատյան գնդի հաստատուն կազմակերպությունը քայքայվեց-ցրիվ եկավ, և նա դեռևս պարտություն չկրած՝ փախուստ տվեց:*

*Ապա աչքերը վեր բարձրացրեց Մուշկան Նիսալավուրտը և տեսավ, որ Հայոց զորքից ոմանք բաժանվել և ետ են ընկել լեռների հովիտներում: Ուստի և աղաղակ բարձրացրեց, քաջալերեց իր չուրջը գտնված Արյաց զորքին, որոնք կանգնած էին Վարդանի գնդի հանդեպ: Այնտեղ երկու կողմերն էլ իրենց պարտված էին զգում, և ընկած դիակների թիվն այնքան մեծ էր, որ նմանվում էր խորդուբորդ քարակույտերի:*

*Երբ այս բանը տեսավ Մուշկան Նիսալավուրտը, սպասում էր Արտաշրի գազաններին, որը նրանց վրա նստած էր բարձր դիտանոցում, ինչպես միջնաբերդում և գալարափողերի բարձր ձայնով չտապեցրեց իր գնդերին և առաջամարտիկ զորքերով շրջապատեց նրան [Վարդանին]:*

*Իսկ կորովի Վարդանն իր քաջ նիզակակիցներով մեծ կոտորած արեց այնտեղ, ուր և հենց ինքն էլ արժանի եղավ ստանալու կատարյալ նահատակության պսակը:*

*Եվ պատերազմի գործը երկարելով՝ օրը տարաժամեց և երեկոյան դեմ դադարեց. չատերն իրենց մահվան օրհասը գտան. մանավանդ որ ընկածների դիակներն այնպես խիտ էին ու իրար մոտ թափված, ինչպես անտառի կտրատված փայտերը:*

*Այնտեղ պետք էր տեսնել նիզակների կոտրատումն ու աղեղների խորտակումը. ուստի և չէին կարողանում ստույգ որոշել երանելիների սուրբ մարմինները. և սաստիկ խուճապ ու խռարանցում էր երկու կողմերի ընկածների համար: Իսկ ովքեր [կենդանի] էին մնացել, ցիրուցան եղան ամուր ձորերի լեռնադաչտերում, և երբ պատահում էին միմյանց, դարձյալ սպանում էին մեկմեկու: Եվ այսպես դաժան գործը չարունակվեց մինչև արևի մայր մտնելը:*

*Եվ որովհետև ժամանակը գարնանային էր, ծաղկալից դաշտերը լցվեցին հորդահոս արյունով: Մանավանդ, երբ մեկը տեսնում էր ընկած բազմաթիվ դիակների կույտերը՝ սիրտը կտրատվում էր, և աղիքները գալարվում, լսելով խոցվածների մրմռոցը, և ջարդվածների մռնչյունը, վիրավորների թավագլոր սողալն ու չարժվելը, փախ-*

*կոտների փախուստը, վհատվածների թաք կենալը, անարի մարդկանց սրտաբեկությունը, թուլասիրտների ճիչերը, սիրելիների ողբը, մերձավորների սուգը, բարեկամների վայնասունը: Որովհետև ո՛չ թե մի կողմը հաղթեց, և մյուս կողմը պարտվեց, այլ քաջերը քաջերի դեմ դուրս գալով՝ երկու կողմերն էլ պարտություն կրեցին:*

*Բայց որովհետև հայոց զորավարն ընկել էր մեծ պատերազմում, այնուհետև էլ ոչ ոք գլխավոր չկար մեջտեղում, որին հենված ժողովվեին մնացած զորքերը: Թեպետև ողջ մնացածներն ավելի շատ էին, քան թե մեռնողները, սակայն նրանք ցանուցիր եղան և քաշվեցին երկրի զանազան ամուր տեղերը և ուժով տիրեցին շատ գավառների ու բերդերի, որոնք ոչ ոք մինչև իսկ առնել չէր կարողանում:*

*Եվ սրանք են այն քաջ նահատակների անունները, որոնք այդ նույն տեղում վախճանվեցին:*



**Վարդանանք**
**(հատված Գր. Խանջյանի «Վարդանանք» գոբելենից)**

*Մամիկոնյան ցեղից* **Քաջ Վարդանը** *հարյուր երեսուն և երեք մարդով.*
*Խորխոռունյաց ցեղից* **Կորովի Խորենը** *տասնինը մարդով.*
*Պալունյաց ցեղից* **Արի Արտակը** *հիսուն և յոթը մարդով.*
*Գնթունյաց ցեղից* **Զարմանալի Տաճատը** *տասնինը մարդով.*
*Դիմաքսյանց ցեղից* **Իմաստուն Հմայակը** *քսաներկու մարդով.*
*Քաջբերունյաց ցեղից* **Հրաշակերտ Ներսեհը** *յոթը մարդով.*
*Գնունյաց ցեղից* **Մանուկ Վահանը** *երեք մարդով.*
*Ընծայնոց ցեղից* **Արդար Արսենը** *յոթը մարդով.*
*Սրվանձտյան ցեղից* **Հառաջադեմ Գարեգինը** *երկու հարազատներով և տասնութը մարդով:*

*Այս երկու հարյուր ութսունյոթը նահատակները՝ ինը մեծամեծ նախարարների հետ՝ հենց այնտեղ վախճանվեցին: Եվ թագավորական տնից և Արծրունյաց տնից և մյուս նախարարների տնից, բացի այս երկու հարյուր ութսունյոթ հոգուց՝ [դարձյալ ընկան] էլի յոթ հարյուր քառասուն հոգի, որոնք ամենքն էլ այն օրը մեծ պատերազմում իրենց անունները գրեցին կյանքի մատյանի մեջ: Եվ այս բոլորը միասին լինում է հազար երեսունվեց մարդ:*

*Իսկ ուրացողների կողմից այն օրն ընկան երեք հազար հինգ հարյուր քառասունչորս մարդ: Նրանցից ինը հոգի խիստ պատվավորներից էին, ուստի, և շատ խոր վշտացավ Մուշկան Նիսալավուրտը: Մանավանդ, երբ տեսավ, որ իր զորքի ստացած սաստիկ հարվածները երեք անգամ ավելի մեծ էին, քան հայերինը, նրա ուժն ու զորությունը կոտրվեց, ընկավ, և նրա սիրտը չէր հանգստանում, որ մտածի ու որոշում անի. որովհետև պատերազմն այնպես չվերջացավ, ինչպես ինքը կարծում էր: Մանավանդ, երբ նայում էր ու տեսնում իր կողմից ընկածների բազմությունը և հաշիվ էլ էր անում ու այնքան շատ էր գտնում իր զորքից ընկածները հայոց զորքից ընկածների համեմատությամբ, առավել ևս այն երևելի մարդկանց պատճառով, որոնց անուն-անուն ճանաչում էր թագավորը,— այդ մարդը մեծ տագնապի մեջ էր ընկնում: Դեպքերն արդարությամբ գրել և հայտնել՝ վախենում էր թագավորից. բայց թաքցնել էլ չէր կարող, որովհետև այդպիսի մեծ կռիվը ծածկել չէր լինի:*

*Եվ մինչդեռ ինքն իրեն այս մտորումների մեջ էր և սրտնեղում էր, ուրացող* **Վասակը**, *որ գաղանների մեջ թաք կացած ազատել էր իր անձը, սկսեց մխիթարել նրա վհատված միտքը և նենգությամբ նրան զանազան հնարներ էր սովորեցնում, թե ինչպե՛ս կարող է խաբեությամբ կռվել բերդերի դեմ: Երդումներ էր կնքում թագավորի հրամա-*

*նով և իր անձի վկայությամբ և այն խաբեբա երեցների միջոցով, որոնք նրա հետ էին. պատգամավոր էր ուղարկում նրանց և այնպես էր ցույց տալիս, թե ապստամբությունը ներված է, և կրկին իրավունք է շնորհված եկեղեցիները շինելու, և բոլոր կարգերը դարձյալ նորոգելու առաջվա սովորության համաձայն: Թեպետև թագավորի հրամանն խկությամբ էր տրված,— որովհետև նրա զորությունը շատ կոտրվեց, ըստ որում նրա երկու կողմերն էլ ջարդվեցին,— սակայն հայոց զորքը, որ շատ անգամ վերահասու էր եղել Վասակի նենգության ու խաբեբայությանը, չուտով չէր կարողանում հավատ ընծայել նաև թագավորի հրամանին:*

### ՎԵՑԵՐՈՐԴ ԵՂԱՆԱԿ

*... Այնուհետև յուրաքանչյուրը թողեց իր գյուղը, ավանն ու ագարակը և ամբողջ բազմությունը գնացին բռնեցին անմարդաբնակ վայրերի ամրոցներն ու բազմաթիվ լեռների ապահով տեղերը:...*

*Սրանք (վասակյանք) առաջ շարժվեցին դեպի Միջնաշխարհը և պատերազմ սկսեցին Կապույտ լեռան մեծ ամրոցների դեմ: Իսկ ներսում գտնվողները քաջությամբ կռվելով ջարդեցին պարսից զորքից շատերին և մնացածներին փախցրին, հասցրին բանակը: Իսկ նրանք դարձյալ անուշ խոսքերով դիմելով՝ ուզում էին խաբեությամբ նվաճել նրանց:*

*Իսկ ովքեր Տմորիքի ամրոցներում էին, երբ լսեցին արքունի զորքի կատարած այս բոլոր չարագործությունները, էլ ամենևին օգտակար չհամարեցին ամրոցներում նստելը: Քաջությամբ դուրս եկան և հարձակվեցին ամրոցականների օգնությամբ և հասնելով պարսիկների մոտակա երկիրը, անխնա կոտորելով՝ արյան նախճիրներ գործեցին, մնացածներին էլ գերի վերցնելով՝ տարան, գցեցին ամրոցները և ջահը ձեռքներն առած՝ այն երկրի շինությունները հրի ճարակ դարձրին:*

*Նույնպես և Խաղտյաց լեռներում գտնվածները՝ երբ տեսան, որ պարսից զորքը հանդգնաբար և աներկյուղ դիմում է Հայոց աշխարհի ամրոցների վրա, նրանք էլ մեծ զորությամբ հարձակվեցին Տայքի ձորագավառի վրա: Այնտեղ նրանք գտան արքունի զորքերից մի մեծ գունդ, որոնք ուզում էին այն երկրում ամրացած մարդկանց գերի առնել, նմանապես և կարծում էին, թե նախարարների գանձերն այնտեղ են, ուստի և անխնա հետախուզում էին այն վայրերը:*

*Այնտեղ տեսան նաև, որ երկու գյուղերում այրել են եկեղեցիները. այս բանի պատճառով է՛լ ավելի բարկացան ու նախանձախնդրությամբ լցվեցին: Հարձակվեցին, բախվեցին միմյանց և հզորապես*

*հաղթելով՝ ջարդեցին պարսից գնդի զորությունը. նրանցից շատերին կոտորեցին, իսկ մնացածներին քշեցին փախցրին երկրից:*

*Եվ անչափ հանդուգն հարձակումից միմիայն Հայոց Վարդան սպարապետի եղբայր երանելի Համայակը՝ անձնազոհ քաջությամբ կռվելով՝ նահատակությամբ վախճանվեց միաբանության սուրբ ուխտի համար: Իսկ մնացած բոլորը ողջ և առողջ փրկվելով [կռվից]՝ հալածում էին փախստականներին:*

*Եվ երբ այս այսպես կատարվեց, թագավորի զորքը դադարեց անխտիր կերպով ամեն տեղ գործի մեջ խառնվելուց, և մանավանդ զգուշանում էին եկեղեցիներին ձեռք տալուց: Նորից մի անգամ էլ սկսեցին հարցնել արքունիքին:*

*Երբ թագավորը լսեց աշխարհի ամբողջ ավերածությունը և ստուգեց մեծ պատերազմի հանգամանքները, սիրտը կոտրվեց իջավ մեծ-մեծ խրոխտալուց, և լռեց ու դադարեց մշտական խաբեբա մտադրություններից, հարցուփորձ էր անում և քննում այդ անխելք գործի վրիպման պատճառները և ուզում էր իմանալ, թե «Ո՞վ կարող է այդ գործերի մասին իրեն ստույգ տեղեկություններ տալ»:...*

*Այն ժամանակ [թագավորը] Հայոց աշխարհի մարզպանությունը հանձնեց իր ավագ նախարարներից մեկին՝ Ատրորմիզդ անունով, որի իշխանությունը սահմանակից էր Հայոց աշխարհին, և զորավարի գործակիցն էր նույն պատերազմում:...*

*Եվ մինչդեռ թագավորն այնտեղ ձմեռոցում էր, հրամայեց հարցուփորձի ատյան կազմել նրանց միջև: Եվ հազարապետը նստեց, որ երկու կողմերին էլ լսի: Եվ երբ ամբաստանությունը երկար օրեր շարունակվեց, ուրացողների կողմը հանցավոր ճանաչվեց:*

*Որովհետև ցույց տվին այն թղթերը, որ Վասակը և բոլոր նրա հետ եղածները տվել էին, թե նրա հետ միաբան են ապստամբության ուխտի մեջ. մի թուղթ Վրաց աշխարհը և մի թուղթ Աղվանից աշխարհը. նույնպես և Աղձնիք գրած մի թուղթ և մի գրություն հունաց թագավորին և մի թուղթ էլ Անտիոքի մեծ սպարապետին: Այս բոլոր թղթերի վրա դրված էր Վասակի վավերական մատանին:...*

*Արդ՝ դուրս եկավ դահճապետը և շտապով մոտեցավ, բոլոր մեծամեծների առաջ հանեց նրանից՝ արքունիքից ստացած շքազգեստները և նրան մահապարտի զգեստ հագցրեց: Ոտներն ու ձեռները կապեցին և կնոջ նման մատակ ձի նստեցրին տարան և հանձնեցին այն գնդանը, որտեղ մահապարտներն էին...*

*1. Քուշանների երկիրը տեղադրված է Պարսկաստանի հյուսիս-արևելքում՝ Բակտրիայում (այժմյան Խորասանում):*

*2. Ակնարկը վերաբերում է հայոց հազարապետ Վահան Ամատունուն:*

*3. Հարկեր. համապատասխանաբար՝ հողահարկ, մաքս, բահրա:*

*4. Վզրուկ-պահլավերեն վզուրգ բառն է, որ նշանակում է «ավագ, մեծ»: Համապատասխանում է հետագայի մեծ վեզիրին:*

*5. Երան և Աներան – նշանակում է Իրան և Ոչ-Իրան կամ իրանցիներ և ոչ-իրանցիներ:*

*6. Զրադաշտական կրոնի անվանումը:*

*7. Չարության աստծու՝ Ահրիմանի անունը:*

*8. Նկատի ունի պարսից արքունիքը:*

*9. **Խոնաստան** – պարսից արքայի պալատի անվանումը:*

*10. Այսինքն՝ արեգակի:*

*11. **Խուժաստան** – երկրամաս, որ տեղադրվում է Պարսից ծոցից հյուսիս:*

*12. Տե՛ս **Մատթ.**, Ժ, 33 և **Ղուկ.**, ԺԲ, 9:*

*13. **Փշտիպան** – պարսկերեն բառ է, որ նշանակում է թիկնապահ:*

*14. **Վռամական կրակ** – թարգմանաբար նշանակում է ամենասրբազան կրակ:*

*15. **Արևմտյան երկիր** - նկատի ունի Բյուզանդիան:*

*16. Այսինքն՝ ծերակույտ, սենատ:*

*17. Այսինքն՝ Ճորա պահակ:*

*18. Այսինքն՝ Տիգրոն:*

*19. Նկատի ունի Արևմտյան Հայաստանը, այսինքն՝ Բյուզանդական Հայաստանը:*

*20. Կովկասյան ցեղեր և ժողովուրդներ, որոնց խնդիրն էր պահպանել Ճորա պահակը:*

*21. **Մատյան գունդ** – Ուսումնասիրողները նույնական են համարում դեռևս Հերոդոտոսի մոտ հիշատակված անմահների գնդին, որը բաղկացած էր 10.000 ընտիր հեծյալներից:*

*22. Խոսքը Արսեն Ընծայեցու մասին է:*

*23. Նկատի ունի փղերին:*

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Դրվագ Բ*

***Գլ. Ի.*** *Հազկերտ թագավորն ուներ Միհրներսեհ անունով չարահնար ու դժնամիտ մի հազարապետ, որը վաղուց մտադրվել էր տնօրենություն տարածել՝ թուլամիտ հոգիներին կործանելու և կորստյան մատնելու համար:*

***Գլ. ԻԱ.*** *Միհրներսեհ ուրախ-ուրախ մտավ Հազկերտ թագավորի մոտ, սկսեց նրա հետ խոսել առանձին և ասաց. «Ամենայն արիները*

*գիտեն, որ Հայոց աշխարհը՝ որքան մեծ ու պիտանի՝ մոտ ու սահմանակից է կայսեր իշխանությանը և ունի նույն կրոնն ու հավատը, ինչ որ կայսեր իշխանությունը: Եվ եթե հայերին ընտանեցնենք մեր օրենքներին, ու նրանք վարժվեն, ապա կարող են հասկանալ, որ մինչև այժմ մոլորված են եղել և հիմա ուղիղ ճանապարհի կգան, այնուհետև կսիրեն ձեզ ու Արյաց աշխարհը և կլքեն-կհեռանան կայսրից, նրա հավատից ու աշխարհից: Եվ նրանից հետո այդ աշխարհը մեզ հետ կլինի սերտ սիրով ու միաբանությամբ: Իսկ երբ Հայքը սերտորեն մերը լինի, Վիրքն ու Աղվանքը կլինեն անպայման»:*

*Երբ պարսից Հազկերտ արքան այս խոսքերը լսեց, Միհրներսեհի միտքը հավանեց ու գովեց, ապա նրա բոլոր խոսքերը հայտնեց մոգերին ու Արյաց ավագանուն: Եվ բոլոր արիացիներն առհասարակ հիացան ու գովեցին այդ գործը: Արքան շտապ կանչեց մոգերին և գրելով մոգության օրենքները, տվեց նրանց, որ տանեն Հայք: Եվ հրովարտակ հղելով հայոց ամենայն ավագանուն՝ գրեց այսպես.*

***Գլ. ԻԲ.*** *«Ինձնից առաջ եղած թագավորները, որ իմ նախնիներն էին և այս թագավորական գահն ունեին, չգիտեմ ինչ մեծ զբաղմունքների պատճառով կամ ինչպե՛ս չխորհելով այսքան ծանր ու կարևոր պետքերի շուրջ՝ չեն հոգացել այս գործերի մասին: Իսկ ես, մտածելով ու Արյաց աշխարհի մոգերից և ուրիշ իմաստուն ու ավագ մարդկանցից տեղեկանալով, իմացա, որ եթե մեր թագավորության իշխանության ներքո գտնվողներից ինչպես վայելում ենք օգուտներ ու հպատակություն, առավել ևս պարտավոր ենք նրանց բոլորի հոգիների փրկության մասին հոգալ: Եվ իմացանք մեր օրենքներից, որ եթե հանկարծ ծուլանանք և հրաժարվենք այսպիսի մեծ հոգատարությունից, ապա ծանր պատիժ պիտի կրենք աստվածներից: Արդ, լսելով մեր հրամանը, կամովին ու սիրով հանձն առեք և բնավ մտքներովդ ուրիշ ոչինչ անց մի կացրեք: Այլև մեր կամքը եղավ հրամայել ձեզ, որ ձեր այդ կարծեցյալ օրենքների մասին գրեք մեզ, որպեսզի իմանանք, թե ինչպես կորսված էիք մինչև այսօր: Եվ երբ դուք մեզ պես մեր ճշմարիտ հավատին լինեք, Վիրքն ու Աղվանքը չեն համարձակվի մեր ու ձեր կամքից հեռանալ»:*

***Գլ. ԻԳ.*** *Եվ հայոց բոլոր մեծամեծները, ստանալով այսպիսի հրովարտակ, ընթերցելով հրովարտակի մեջ գրված ամեն ինչը և այն էլ իմանալով, որ նրանց անօրինության օրենքները գրով են ուղարկվել իրենց, զգացին թշնամու այն գաղտնի նետը, որի սլաքը խորամանկությամբ ուղղված է Քրիստոսի անարատ հոտի դեմ:*

*Այնուհետև հայոց տանուտերների հրամանով հավաքվեցին Հայոց*

*աշխարհի եպիսկոպոսներն ըստ գավառների, և պատվական երեցներ ու վանականներ, որոնց անուններն են.*

> **Հովսեփ**, *որ թեպետ և երեց էր ըստ ձեռնադրության, բայց Հայոց կաթողիկոսության աթոռն ուներ այն ժամանակ,*

*Տեր* **Անանիա՝** *Սյունյաց եպիսկոպոս,*
*Տեր* **Մուշե՝** *Արծրունյաց եպիսկոպոս,*
*Տեր* **Սահակ՝** *Տարոնի եպիսկոպոս,*
*Սուրբ* **Սահակ՝** *Ռշտունյաց եպիսկոպոս,*
*Տեր* **Մելիտե՝** *Մանձկերտի եպիսկոպոս,*
*Տեր* **Եզնիկ՝** *Բագրևանդի եպիսկոպոս,*
*Տեր* **Սուրմակ՝** *Բզնունյաց եպիսկոպոս,*
*Տեր* **Թաթիկ՝** *Բասենի եպիսկոպոս,*
*Տեր* **Երեմիա՝** *Մարդաստանի եպիսկոպոս,*
*Տեր* **Գադ՝** *Վանանդի եպիսկոպոս,*
*Տեր* **Բասիլ՝** *Մոկաց եպիսկոպոս,*
*Տեր* **Եղբայր՝** *Անձևացյաց եպիսկոպոս,*
*Տեր* **Տաճատ՝** *Տայոց եպիսկոպոս,*
*Տեր* **Քասուն,** *Տարբերունիի եպիսկոպոս,*
*Տեր* **Զավեն՝** *Մանանաղիի եպիսկոպոս,*
*Տեր* **Եղիշե՝** *Ամատունյաց եպիսկոպոս,*
*Տեր* **Երեմիա՝** *Ապահունյաց եպիսկոպոս:*

*Սրանք էին բոլոր տեղերի եպիսկոպոսները: Իսկ պատվական երեցներից՝ Սուրբ Ղևոնդը, Խորենը Մրենից, Դավիթը և ուրիշ երևելի երեցներ, բազում ավագ վանականներ՝ սքանչելի ու հրեշտակակրոն տեր Աղանի հետ միասին, որ Արծրունյաց տոհմից էր:*

*Իսկ նախարարական տոհմերից հավաքվել էին.*

*Սյունյաց տեր* **Վասակը,**
*Արծրունյաց տեր* **Ներշապուհը,**
**Վրիվ** *մաղխազը,*
**Մամիկոնեից** *տեր և Հայոց սպարապետ* **Վարդանը,**
*Վահևունյաց տեր* **Գյուտը,**
*Մոկաց տեր* **Արտակը,**
*Անձևացյաց տեր* **Շմավոնը,**
*Ապահունյաց տեր* **Մանեճը,**
*Վանանդի տեր* **Առավանը,**
*Արշարունյաց տեր* **Արշավիրը,**

*Ամատունյաց տեր* **Վահանը**,
*Գնունյաց տեր* **Ատոմը**,
*Պալունյաց տեր* **Վարազշապուհը**,
*Աշոցքի տեր* **Հրահատը**,
*Դիմաքսենից տեր* **Համայակը**,
*Արեղենից տեր* **Գազրիկը**,
*Առավեղենից տեր* **Փափագը**,
*Ձյունական* **Վրենը**:

*Այս բոլոր ավագ տանուտերները, ավագ սեպուհներով, բարեպաշտ եպիսկոպոսներով, ավագ քահանաներով և վանականներով հանդերձ, գրեցին և Հազկերտ Թագավորին ու արքունիքի բոլոր մեծամեծներին հղեցին հրովարտակի այս պատասխանը:*

**Գլ. ԻԴ.** *«Մեր լուսավոր ու ճշմարիտ օրենքների մեջ գրված է (որը ձեզ կթվա դատարկաբանություն ու բարբաջանք), թե «Ծառանե՛ր, հնազա՛նդ եղեք ձեր մարմնավոր տերերին, ինչպես Աստծուն»: Եվ մենք ըստ մեր կարողության, նախ՝ վախենալով մեր հավատի հրամանից, ապա և ձեր մեծ Թագավորությունից, մտքներումս դրել ենք ո՛չ թե մարդկային երկյուղից, կամ առերես՝ չար ծառաների պես ենթարկվել ձեզ, այլ կամքով ու հոժարությամբ ձեր յուրաքանչյուր ցանկությունն ու հրամանը կատարել և ձեզ ծառայել ոչ միայն մեր ունեցվածքը ծախսելով, այլև (եթե հարկ լինի) մեր անձանց ու մեր որդիների արյունը ձեզ նվիրելով: Սակայն մեր հոգիների փրկության կամ կորստյան հոգսը Թող ամեննին ձեզ չանհանգստացնի: Այդ պատճառով էլ, ձեր հրամանի համաձայն, մեր օրենքները գրել և ձեզ ուղարկելը պատշաճ ու հարմար չհամարեցինք: Որովհետև եթե ձեր սուտ ու ծաղրի արժանի օրենքները կարդալու արժանի և մերձենալի չհամարեցինք, որպեսզի չանարգենք ձեզ՝ ծաղրի ենթարկելով օրենքներդ,– որ ձեր իսկ մեծ խրատի համաձայն՝ պարտավոր էիք հասկանալ գրելիս և մեզ ուղարկելիս,– մենք ինչո՞ւ այսպիսի աստվածահաճ ու ճշմարիտ օրենքները գրենք-ուղարկենք ձեզ՝ անգետներիդ՝ հեգնելու և անարգելու: Սակայն մեր հավատից Թող ձեզ միայն այնքանը հայտնի լինի, որ ձեզ պես չենք ծառայում տարերքին՝ արեգակին ու լուսնին, հողմերին ու կրակին: Այն բազում աստվածներին, որ անվանում եք դուք երկրի վրա ու երկնքում, երկրպագություն չենք մատուցում: Մենք սովորել ենք և հաստատ ծառայում ենք միակ ճշմարիտ Աստծուն, որ արարեց երկինք ու երկիր և ամենայն ինչ, որ նրանցում կա: Եվ միայն նա է ձեր աստվածացրածների Աստվածն ու Արարիչը, Թագավորը Թագավորաց և Տերը Տերանց: Եվ բոլոր բանավոր-*

*ների համար միայն նրան է վայել մատուցել երկրպագություն ու պաշտամունք»:*

***Գլ. ԻԵ.*** *Այս բոլոր խոսքերը գրելով նամակի մեջ՝ հավաքված սուրբ քահանաները, հայոց բոլոր նախարարների հետ միասին, տվին, որ տանեն Արյաց Հազկերտ թագավորին: Նա էլ հրամայեց կանչել մոգերին ու արքունի ամենայն մեծամեծներին, բանալ տվեց հայերի ուղարկած նամակը և ստիպեց կարդալ բոլորի առաջ: Եվ նամակի խոսքերը լսելով, թագավորը, մոգերով ու արքունի մեծամեծներով հանդերձ, ջղագրգիռ կատաղությամբ մոգերին ու Արյաց ամենայն ավագանուն հարցրեց, թե «Ձեզ ինչպե՞ս է թվում ծառաների այդ աներկյուղորեն համարձակ պատասխանն իրենց տիրոջը»: Իսկ մոգերի ու արքունի ամենայն մեծամեծների խմբերը ոտքի կանգնելով՝ ասացին, թե «Նրանք իրենց անձերի և աշխարհի կորուստն են գրել ձեզ: Իսկ թե դուք ինչպես պիտի ցույց տաք ձեր իշխանությունն ու իրենց հպատակությունը, այդ միայն դո՛ւք գիտեք: Եվ առավել գրգռեցին թագավորին ու ամենայն մեծամեծներին, ասելով. «Եթե նրանք ուրիշ որևէ տեղից օգնության հույս չունենային, այդպիսի բան իրենց մտքներով իսկ անց չէին կացնի, ո՛ւր մնաց, թե նամակի մեջ ձեր թագավորությանն ուղարկեին»: Այս չարախորհուրդ Միհրներսեհն էր ասում:*

*Եվ Հազկերտ արքան, երբ այս ամենը լսեց մոգերից ու արքունիքի բոլոր մեծամեծներից, կատաղի գայրացած հրաման տվեց շտապ հրովարտակներ ուղարկել Հայոց, Վրաց ու Աղվանից աշխարհները: Եվ կարգադրեց հրովարտակների մեջ գրել, որ այդ երեք աշխարհների բոլոր տանուտերերն ու ավագ սեպուհները փութով ու անպատճառ գան արքունիք: Այս հրովարտակը հասավ երեք աշխարհները՝ Հայոց, Վրաց ու Աղվանից: Ընթերցվեցին բոլորի առջև: Եվ երբ լսեցին ամենքի՝ այսպիսի ստիպմամբ, փութով արքունիք կանչվելը, իսկույն հասկացան, որ ոչ թե խաղաղության, այլ մարդկանց կորստյան համար է այդ հարկադրական հրավերը: Վշտացած աղմկեցին ու հոգով ապավինեցին Աստծո օգնականությանը:*

*Այնուհետև երեք աշխարհները միմյանց մոտ պատգամավորություն ուղարկեցին, ուխտ դրեցին ու հաստատեցին՝ Ավետարանի վրա խիստ երդվելով: Մտածում էին, թե չգնալը կհամարվի ապստամբություն, իսկ գնալու շուրջն էլ վիճելով տարակուսում էին: Վերջապես գնալը լավագույն ելք համարելով՝ գործի վախճանի համար Աստծուն կանչեցին օգնական: Բայց իրենց մտքերը, խոսքերը և խորհուրդները, սուրբ Ավետարանի միջնորդությամբ, իրար միջև ան-*

*քակտելի ու աներկբայելի հաստատեցին: Ասացին՝ «Այո՛, գնում ենք, սակայն չենք համաձայնի ուրանալ երկնի ու երկրի Արարչին»:*

*Եվ, այսպես, ուխտով ու երդմամբ միաբանված երեք աշխարհները՝ Հայքը, Վիրքն ու Աղվանքը, գնացին արքունիք:*

*Եվ Հայոց մեծամեծներից նրանք, որ այն ժամանակ ճանապարհ ընկած գնացին, սրանք են.*

*Սյունյաց տոհմից Սյունյաց տեր* **Վասակը**, *որ այն ժամանակ մարզպանն էր Հայոց,*
*Արծրունյաց տոհմից* **Ներշապուհը**,
*Ռշտունյաց տոհմից* **Արտակը**,
*Խորխոռունյաց տոհմից* **Գադիշոն**,
*Մամիկոնյան տոհմից* **Վարդանը՝** *Հայոց սպարապետը և տերը Մամիկոնեից,*
*Մոկաց տոհմից* **Արտակը**,
*Ապահունյաց տոհմից* **Մանեճը**,
*Ամատունյաց տոհմից* **Վահանը**,
*Վահևունյաց տոհմից* **Գյուտը**,
*Անձևացյաց տոհմից* **Շմավոնը**,
*Իսկ Վրաց աշխարհից* **Աշուշա** *բդեշխը և աշխարհի այլ տանուտերներ:*

***Գլ. ԻԶ.*** *Այս ամենքը, հասնելով արքունիք, նախ հանդիպեցին արքունի դռան մեծամեծներին, ապա Հազկերտ Թագավորին: Եվ պարսից արքա Հազկերտը հրաման տվեց, որ առավոտյան իր մոտ՝ պալատում լինեն արքունի բոլոր մեծամեծներն երևելի մոգերով հանդերձ: Եվ Թագավորի ասածներն առավոտյան կատարվեցին:*

*Ապա հրամայեց, որ Հայքից, Վիրքից ու Աղվանքից եկածներին իր մոտ բերեն: Եվ առաջինը Հայոց նախարարներին ու սեպուհներին հարցրեց, ասաց. «Նախ և առաջ ցանկանում եմ ձեզանից լսել, Թե ես ձեզ ինչ եմ համարել և կամ դուք ինչպես եք պատկերացնում ձեր անձերի ինձ պատկանելը»: Եվ նրանք պատասխանելով՝ միաբան ասացին, Թե «Այդ հրամանիդ իմաստն ու պատասխանը հայտնի են բոլոր արյաց և անարյաց: Մենք ձեզ Թագավոր ենք ճանաչում, ինչպես ամենքի, այնպես էլ մեզ վրա: Աստծո նման իրավունք ունես սպանելու և ապրեցնելու: Այն տարածվում է մեր վրա և բոլոր նրանց վրա, որոնք քո Թագավորության մեջ են»:*

*Հազկերտ արքան, արքունիքի ամբողջ ավագանու հետ միասին, այսպիսի պատասխան լսելով, նրանց ասաց. «Այդ պատասխաններն ու ձեր նամակը, որ ուղարկել էիք ինձ, շատ հեռու են իրարից և նման*

չեն իրար: Որովհետև նամակում հայտնել էիք, թե կան բաներ, որոնցով ծառայում ենք քեզ ու քո կամքին ու հրամանիդ համաձայն ենք՝ առանց ընդդիմանալու, և կա բան, որ ո՛չ դու պիտի ասես, և ո՛չ էլ մենք կարող ենք հնազանդվել ու հանձն առնել: Այժմ մեր թագավորության և ամենայն արիների առաջին կարևոր ու պետքական պահանջը ձեզանից այդ է, և դրանով են ճանաչվում մեր տիրությունն ու խնամարկությունը ձեր նկատմամբ և ձեր արդարամտությամբ ու հնազանդությամբ ծառայելը մեզ: Որովհետև մեզ՝ թագավորիս և Արյաց աշխարհիս հանդեպ մինչև այսօր ցույց տված ձեր վաստակից ու օգուտից գոհ ենք: Եվ կամենում եմ ձեզ պատվով ու մեծամեծ փառքերով արձակել ձեր աշխարհը, միայն թե հանձն առնեք նաև իմ այդ կամքը, որ արտահայտում եմ՝ ձեր հոգու փրկության համար հոգալով: Հա՛նձն առեք ու դարձե՛ք կորստյան ճանապարհից, որի վրա մինչ այժմ շրջում էիք, ինչպես կույրը խավարի մեջ: Իսկ եթե ուրիշ կերպ մտածեք և ինչ մտքի ու մոլար օրենքների մեջ մինչև հիմա մնացել եք, նրանցում համառեք դուք՝ Հայք, Վիրք, Աղվանք, ապա ոչինչ կհամարեմ ձեզնից ստացած այնքան օգուտներն ու փաստակները և կանանցով, որդիներով ու ազգով բնաջինջ կանեմ»:

Երեք աշխարհների ազատները լսեցին պատվի, խոստումների ու մահվան սպառնալիքի բոլոր այս խոսքերը պարսից թագավոր Հազկերտից և մի պահ լռեցին: Բայց աներկյուղ և քաջասիրտ հառաջ գալով՝ Մամիկոնեից տեր և Հայոց սպարապետ Վարդանն ամբողջ բազմության առաջ պատասխան տվեց Հազկերտ թագավորին ու ասաց. թե «Շատ են այս երեք աշխարհների այն ազատները, որ ավագ են ինձանից և՛ գահով, և՛ տարիքով, իսկ շատերն էլ կրտսեր են: Այն վաստակն ու հպատակությունը, որ ծառաներն են պարտավոր ցույց տալ իրենց տերերին ու թագավորին նախ՝ դո՛ւ, որ տերն ես ամենեցուն, ապա և ամենայն արիները, քաջ գիտեք, թե ես և սրանցից յուրաքանչյուրն ինչպես ենք կատարել, և կարիք չկա, որ ես կամ սրանցից որևէ մեկը ձեզ բացատրի իր վաստակն ու ծառայությունը: Ես իմ մտքում այսպես եմ դրել, որ այսուհետև, եթե հնարավորություն լինի իմ մեկ անձը շատ անձեր դարձնելու, դրանից էլ առավել ուժով ու հնազանդությամբ, կյանքով և տանս եղած ամբողջ ունեցվածքով ծառայել Արյաց տիրոջը, հանուն Արյաց աշխարհի: Բայց այն օրենքները, որ սովորել եմ իմ մանկությունից, անհնար է թողնել՝ նրանց դավելով մարդկային երկյուղից: Քանզի եթե նույնիսկ մարդուց ընդունած լինեի այդ արդար վարդապետությունը, որ հաստատված է իմ մտքում և, գիտենալով, որ ճշմարիտ է, ուրանայի, ապա ողորմելի

*մարդ կհամարվեի: Ո՞ւր է, թե այն օրենքները, որ Աստծո բերանից եմ ընդունել ու սովորել, վաճառեմ մարդկային երկյուղից, հանուն սնոտի փառքերի: Քա՛վ լիցի: Դրա՛նք են իմ պատասխանները, որոնցով կուզենամ մեռնել, քան ապրել ուրացությամբ, առանց Աստծո: Իսկ բոլոր ուրիշները, որ կան ձեր առաջ և քրիստոնեական հավատ ունեն, իրենք կարող են պատասխան տալ իրենց անձերի համար»:*

*Եվ երեք աշխարհների՝ Հայքի, Վիրքի ու Աղվանքի, ազատները լսելով Հայոց սպարապետ Վարդանի աներկյուղ պատասխաններն ու տեսնելով թագավորի սաստիկ ջղային դեմքը, պատասխան տվին, ասացին. «Թող արքան մեզ ների, որպեսզի իրար հետ խորհենք մի քանի օր և հետո ձեզ հաստատ պատասխան տանք միաբանությամբ»:*

*Թագավորն ու իր ամբողջ ավագանին հավանեցին այդ խոսքերը, նրանց ժամանակ տվին խորհելու և ատյանն արձակեցին:*

***Գլ. ԻԷ.** Այն ժամանակ երեք երկրների՝ Հայքի, Վիրքի ու Աղվանքի, նախարարները մի տեղ հավաքված, տարակուսանքի մեջ էին իրենց անձերի վրա և խորհուրդ էին անում, թե ինչպիսի՞ հնարքով ու մտածողությամբ պիտի ելք գտնեն այդ վիճակից: Եվ մի քանի օր խնդրի շուրջ հուզված շատ միտք անելով՝ կանգ առան այս մտքի վրա. «Այլևս ոչ մի հնար չկա ելնելու այս որոգայթից, որ չար սատանայի որսորդն է լարել և մեզ բռնել, բացի նրանից, որ միաժամանակ պատճառաբանություններով հանձն առնենք նրանց կարգադրությունը և գնալով մեր աշխարհները, այնուհետև կամ ապրենք՝ ծառայելով Քրիստոսի ճշմարիտ հավատին, որի մեջ ծնվել ենք ավազանի նորոգությամբ՝ նահատակ Գրիգորի ու նրա զավակների ամենասուրբ վարդապետության շնորհիվ, կամ էլ, թողնելով մեր աշխարհները, օտարության գնանք կանանցով ու որդիներով՝ հաստատորեն ապավինելով կենարար Փրկչի այն խոսքին, որ ասում է. «Երբ որ ձեզ հալածեն այս քաղաքից, փախեք մյուսը»[1]: Հետո էլ, եթե միայն մեր անձանց փրկության մասին մտածենք, ընդդիմանանք աշխարհի անօրեն հրամաններին, պատճառ կդառնանք անթիվ տղամարդկանց ու կանանց, ծերերի ու մանուկների բազմությունների հավիտենական կորստին. նրանց այստեղ քշելով՝ բոլորին սերնդե-սերունդ կծառայեցնեն անօրեն պաշտամունքներին»:*

*Արդ, թեկուզ և մեկն առանձին իր մտքով անց է կացրել այսպիսի որոշում, նույնի վրա կանգ առան նաև միաբանությամբ՝ միմյանց հետ մի քանի օր գիշեր ու ցերեկ խորհելով, սակայն չէին համարձակվում իրենց միաբանության վճիռը հայտնել Հայոց զորավար ու Մամիկո-*

նեից տեր Վարդանին: Իրենց ներսում համոզված էին, թե անհնար է, որ նա հանձն առնի ենթարկվել այս խորհրդին՝ ունենալով իր հոգու անշարժ հավատը Քրիստոսի հաստատուն վեմի վրա: Բայց չէին էլ կարող չհայտնել նրան ու չպատմել այս ամենի մասին, քանզի գիտեին, որ, առանց նրան, իրենց բոլոր մտածածները, պատճառաբանություններն ու գործողությունները թերի են ու անկատար: Թեպետ և կարծում էին, որ կարող կլինեն մտածած պատճառաբանությունների ծածկույթով փրկվել, թագավորի ու Արյաց բոլոր մեծամեծների մտքերն իմանալ և դառնալ իրենց երկրները, սակայն գիտեին, որ թերակատար են լինելու իրենց խորհրդի գործն ու գործողությունների առաջարկությունը: Որովհետև բոլորն էին տեսել, գրքերից էլ լրիվ գիտեին, որ այդպիսի գործի ամեն հնարքներն ի բնե շատ անգամ գլուխ են եկել Մամիկոնյան տոհմի միջոցով և նրա միաբանությամբ:

Եվ նրանք՝ բոլոր նախարարներն ու սեպուհները, որ հավաքված էին արքունիքում, միտք անելով այս ամենի մասին, միաբանված եկան Մամիկոնեից տեր ու Հայոց զորավար Վարդանի մոտ ու նրան հայտնելով միաձայն արած խորհուրդը, պատմեցին իրենց ամենայն դիտավորությունները, կատարելիքի մասին մտածումները, դրանց էլ գումարած՝ իրենց բոլորի աղաչանք-պաղատանքը: «Նայի՛ր հանգիստ մտքով,— ասացին,— տե՛ս առաջիկայում բյուր մարդկանց պատահելիք չարաչար աղետները, հիշի՛ր մայրերի հառաչանքները, մտքի՛դ բեր մանուկների ողբ ու կոծը, ծերերին ու պառավներին բռնությամբ օտարության քշելը և այլ այսպիսի անհնարին ու չար վշտերը, որ պատահելու են բոլորին: Եթե միայն մարմնական տանջանքներով ու մահվամբ կրելու լինենք այս ամենը, կլիներ շատ ծանր ու դառն, լալու արժանի: Բայց չէ՞ որ մեր առաջ հոգու ու մարմնի գայթակղությունն ու կորուստն են կանգնած: Եվ ոչ թե լոկ հարևանցի է լինելու մեզ հասած այս վտանգի վախճանը, այլ խավար ամբարշտությունը թանձրամած քողով ծածկելու է մեր սուրբ եկեղեցիները և ժողովուրդներին, կանանց ու զավակներին՝ հավիտենից հավիտյան: Եվ եթե դու, միաբանելով մեր խորհրդին, կարողանաս միաժամանակ քո մտքերը համաձայնեցնել, գիտենք, որ բոլորս ողորմածության կարժանանանք, ինչպես և երեք աշխարհներիս ընդհանուր եկեղեցիներն ավերի չեն ենթարկվի, և մեր բովանդակ աշխարհների բնակիչները չեն քշվի գերության: Սուրբ հավատը հիմքից չի շարժվում երբեք, իսկ թե առժամանակ երերա էլ, ապա վերստին հաստատորեն կկանգնի, և հաստատողն էլ կլինի Ամենակալի աջը: Եվ սա հաստատ այսպես կլինի, եթե կարողանաս մեզ համար մի քիչ հի-

*վանդանալ, որպեսզի ամենագթառատ բժիշկ Բանն Աստված առողջացնի մեզ՝ քեզանով հանդերձ»:*

*Եվ Հայոց զորավար ու Մամիկոնեից տեր Վարդանը, հայոց, վրաց ու աղվանից նախարարներից լսելով այս բոլոր խոսքերը, ամենևին հանձն չառավ համաձայնել ասածներին, կամ էլ՝ նույնիսկ կցորդ լինել այսպիսի խորհրդին, այլ սաստիկ վրդովված, բարձրաձայն գոչելով՝ ամենքին ասաց. «Չի կարող պատահել, որ ես խաբեմ իմ Արարչին՝ պատճառաբանություններով կամ ճշմարտությամբ, և անօրեն ու մահկանացու ազգի առաջ չեմ ուրանա նրան, որ պետք է ուրանա իրեն ուրացողներին՝ Հոր և սուրբ հրեշտակների առաջ: Քա՛վ լիցի, որ ես մտածելով կարիքների ու վշտերի, կնոջ ու որդիների և ազգի մասին, մոռացության տամ այն, որ ասում է. «Ով որ կնոջն ու որդիներին սիրում է առավել, քան ինձ, արժանի չէ ինձ»[2]:*

*Եվ երեք աշխարհների նախարարները, Հայոց զորավար ու Մամիկոնեից տեր Վարդանից լսելով այս բոլոր խոսքերը, թեպետ և ընկան անասելի տրտմության մեջ ու վրդովվեցին, սակայն չթուլացան ու չհրաժարվեցին իրենց առաջարկությունից, քանզի չէին մոռանում վտանգը և ունեին մաղթանքների ուրիշ ձևեր ևս: Եվ մի տեղ հավաքվելով՝ իրենց մոտ կանչեցին Մոկաց իշխան Արտակին ու, նրան առավել չտապեցնելով, խնդրեցին՝ անձանձրույթ խանդաղատանքով նստել ու խոսել իրենց սպարապետ և Մամիկոնեից տոհմի տեր Վարդանի հետ: Այդ Արտակը համեստ, խելոք ու քաջ տղամարդ էր, և Մամիկոնեից տեր Վարդանն էլ մեծ պատվով սիրում էր նրան: Մոկաց տերը հավանեց Հայոց նախարարների խնդիրքը, հանձն առավ ամենահորդոր ջանադրությամբ խոսել նրա հետ, հարաժամ աղաչել... Այսպես էլ արեց Մոկաց իշխան Արտակը. մերթ առանձին, մերթ Հայոց ավագանու հետ միասին, ըստ իր հանձնառության, շատ օրեր, գիշեր ու ցերեկ չէր դադարում նրա հետ նույն բանի մասին խոսելուց, աղերսագին խնդրելուց: Բոլորին նույն խորհրդի համար ստիպում ու հորդորում էր նաև վրաց Աշուշա բդեշխը, որը խելացի ու բանիմաց մարդ էր և որի կինն էլ Արծրունյաց տոհմից էր ու Մամիկոնեից մեծ սեպուհի՝ Վարդանի եղբոր քենին էր: Այս Աշուշան ավելի շատ էր հորդորում հայոց նախարարների ամբողջ բազմությանն ու Մոկաց տեր Արտակին՝ Հայոց զորավար Վարդանի հետ այս ամենի մասին խոսել առանց հապաղելու: Եվ հենց ինքն էլ նույնն էր խոսում նրա հետ՝ անձանձիր աղաչելով և ստեպ-ստեպ հիշեցնելով այն հանգամանքը, թե իր (Վարդանի) չհամաձայնելն ինչպիսի կորուստ կպատճառի երեք աշխարհներին, իսկ համաձայնելն ու հանձն առնելն էր*

*կրերեն փրկություն մարդկանց ու ակնկալություն իր անձի ապաշխարության:*

*Եվ երբ երեք աշխարհների ավագ տանուտերներն ու սեպուհները հայոց զորավար Վարդանի առաջ դրին այսպիսի բազում խոսքեր ու թախանձագին աղաչանքներ, հետո էլ բերեցին Սուրբ Ավետարանը և բոլորը ձեռքները նրա վրա դնելով երդվեցին, ասելով՝ «Եթե դու միաժամանակ կարողանաս պատճառաբանություններով հանձն առնել թագավորի ասածները և մեզ ազատես որոգայթադիր թշնամու հարձակումներից, քո ամենայն ասածները կլսենք և կկատարենք՝ մեր անձերը դնելով սրբության ուխտի վրա և մեր արյունը հեղելով ամբողջ աշխարհի փրկության համար: Եվ եթե պատահի, որ մենք թողնենք աշխարհն ու ամենայն ստացվածքները և փախչենք օտարություն, ապա դա կընտրենք կանանցով ու որդիներով հանդերձ և սիրով հանձն կառնենք աղքատությունն ու մուրացկանությունը: Միայն թե այս բարկությունից ազատվենք: Եվ ով որ այս խոսքերից թերանալով՝ խաբի այս ուխտին և նենգությամբ հեռանա Սուրբ Ավետարանի վրա տված երդումից ու այս բազմության միաբանությունից, թող նա բաժանվի–հեռանա, ինչպես Հուդան, որ պոկվեց–հեռացավ սուրբ առաքյալների գնդից, և այսպիսինի բաժինը, առանց ապաշխարության ու թողության, թող նրա (Հուդայի) հետ լինի՝ մատնված անշեջ բոցին, որ Աստված է պատրաստել սատանայի ու նրա արբանյակների համար: Իսկ ինչ վնասներ կամ գերություններ և երկրաշարժեր այս երեք աշխարհներին հասնեն, այդպիսի անձից և նրա գործակիցներից վրեժխնդիր Աստվածը թող հավիտյան պահանջի: Իսկ բարի ու օգտակար պահպանությունը, որ երեք աշխարհների բազում հոգիներին պիտի պարգևի փրկիչ Քրիստոսը՝ մեզ հետ առժամանակ համաձայնելուդ շնորհիվ, թող այն էլ մնա ժառանգություն՝ ի փրկություն քո ոգու թողության և քո տոհմի՝ հավիտենից հավիտյան»:*

*Լսելով այս բոլոր խոսքերը երեք աշխարհների ազատներից և տեսնելով բոլորի սարսռազդու երդումով կնքված միաբանության Ավետարանը, որի առաջ ուխտեցին և ավանդեցին կնիքով, ինքը՝ հայոց զորավար ու Մամիկոնեից տեր Վարդանն էլ արտասվալից հանձն առավ պատճառաբանությամբ առժամանակ վիրավորվել հանուն երեք աշխարհների և նրանց տղամարդկանց ու կանանց:*

***Գլ. ԻԸ.*** *Այսպես բոլորը միաբանված հանձն առան թագավորի հրամանը կատարել կեղծ ուրացությամբ և, գնալով մոխրանոցի տունը, նրանց կեսը, ո՛չ բոլորը, ցույց տվեց, պատճառաբանությամբ և ոչ*

*ճշմարտությամբ, երկրպագություն սնոտի պաշտամունքին: Իսկ ոմանք, թեպետ գիտեին անկասեցնելի գլորումը, տենչալով աշխարհիս փառքերին՝ անկեղծ Աստծո փառքը փոխեցին աշխարհիս եղծանելի ու անցավոր կյանքի հետ: Եվ այս տեսնելով, պարսից թագավորը և արքունի բոլոր մեծամեծներն ու մոգերն անհուն խնդությամբ տեսակ-տեսակ նվերներ էին մատուցում իրենց աստվածներին: Այնօր մեծ ուրախության խրախճանք կատարեցին՝ հաշվելով, որ դրանով անշարժ հաստատվեց իրենց թագավորությունը, այնուհետև կարող են ապրել խաղաղությամբ, առանց երկյուղելու բոլոր թշնամիներից: Եվ երեք աշխարհների՝ Հայոց, Վրաց ու Աղվանքի տանուտերներին ու սեպուհներին թագավորական հանդերձներ հագցնելով զարդարեցին, այլև տեսակ-տեսակ ուրիշ բազմաթիվ պարգևներով ու պատիվներով, գյուղերով ու ագարակներով՝ յուրաքանչյուրին որքան որ պետք էր՝ հարստացրին ամենքին: Ապա նրանց հրաժեշտի պատրաստելով՝ շտապեցրին, որ յուրաքանչյուրը շուտ հասնի իր աշխարհը: Նրանց հետ էլ դնելով սուտ վարդապետների մի բազմություն, որ մոգեր են կոչվում, հորդորում էին սովորել այն ծիծաղելի փչոցների ուսմունքը և քիթումռութով քրթմնջալու լեզուն, որ ավելի չէր, քան օձահմանների ու որովայնախոսների մրմռոցը: Պատվիրեցին երեք աշխարհներում խաբեության դպրոցներ բացել և բոլոր բնակիչներին՝ տղամարդկանց ու կանանց, սովորեցնել մոգերի ուսմունքը:*

*Նրանք համաձայնեցին և հանձն առան իրենց հետ տանել մոգերի բազմությունը: Ապա գնացին հրաժեշտ տալու թագավոր Հազկերտին ու արքունի դրան մեծամեծ ավագանուն: Ժամանակավոր ուրացածներից յուրաքանչյուրն իր իմացածի ու կարեցածի չափ սուտ գովեստներ ու կեղծ շնորհակալություններ էր մատուցում թագավորին, արյաց ամենայն ավագանուն, մանավանդ չարաթույն Միհրներսեհին:*

*... Ապա երեք աշխարհների՝ Հայքի, Վիրքի ու Աղվանքի նախարարները, հրաժեշտ տալով և իրենց հետ առած մոգերի բազմության խմբերը, յուրաքանչյուրն իր աշխարհը դարձավ, ճանապարհին էլ բազում անգամ հաստատելով Սուրբ Ավետարանի վրա տված նույն ուխտը: Բաժանվելով նաև միմյանցից՝ յուրաքանչյուրն իր աշխարհը գնաց, խոստանալով ժամանակին իրար հայտնել, Աստծո հրամանի համաձայն, այն գործերի մասին, որ ծրագրեցին կատարել: Սակայն պարսից Հազկերտ արքան վրաց Աշուշա բդեշխին, Սյունյաց իշխան Վասակի երկու զավակներին՝ Բաբիկին ու Ատրներսեհին, չարձակեց հայոց մյուս նախարարների հետ. առաջիկա գործերի անորոշու-*

*թյունը նկատի առնելով՝ նա կասկածով զգուշանում էր:*

***Գլ. ԻԹ.*** *Արդ, Հայոց տանուտերներն, իրենց հետ եղած սեպուհների հետ միասին, հասան Հայոց աշխարհը: Ողջ էին և ոչ ողջ, կիսամեռ կենդանի: Նրանք այնպես զվարթ չէին երևում, ինչպես առաջներն էին՝ հեռավոր ճանապարհից ողջ առողջ վերադառնալուց: Եվ նրանց ընդառաջ ելնելով, Քրիստոսի պաշտոնյաների դասն իր հետ բերել էր կենսատու խաչի նշանը և առաքելանման նահատակ Սուրբ Գրիգորի նշխարները:*

*Իսկ մոգերի գնդերն ստիպում էին ու հարկադրում՝ կրակը տանել Տիրոջ սուրբ տաճարը, ուրիշ ակնառու, գեղեցիկ տեղերում շինել ատրուշաններ և փայտ փոխադրող բեռնակիրներ կարգել վառ պահելու կրակն անհագ չաստծո, որն ուտելուց անզգա է, ոչինչ չի շնորհում պաշտոնյաներին և ձանձրացնում է ավելորդ մոխիրները դուրս կրող մոխրաղեմ պագշոտյալներին:*

***Գլ. Լ.*** *Եվ արդ, այս բոլոր չարիքները տեսնելով՝ Մամիկոնեից տեր և Հայոց սպարապետ Վարդանն իր մոտ կանչեց ամբողջ ընտանիքը, եղբայրներին, ազատներին, ծառաներին և առհասարակ իր պալատի ամբողջ բազմությանը: Սկսեց խոսել նրանց հետ և ասաց. «Իմ Արարիչ ու Տեր Հիսուս Քրիստոսին ես չեմ ուրացել՝ կամովին կամ երկյուղից: Քա՛վ լիցի: Եվ ոչ էլ հեռացրել եմ ինձանից Սուրբ Ավետարանի վարդապետությունն ու հավատս, որ սովորեցրել ու հաստատել է իմ մեջ ճշմարիտ պապն իմ՝ Տեր Սահակը: Այլ մի փոքր ժամանակ, մինչև այս ժամը, ձեր բոլորի փրկության համար ինքս կորա պատճառանոք, որպեսզի ինձ ձեզ հետ միասին փրկելով՝ ապաշխարեմ և ապրեմ: Ըստ այդմ, սովորել և հիշում եմ սուրբ մարգարեների քարոզությունը, որ ասում է. «Կամենում եմ մեղավորի ո՛չ թե մահը, այլ նրա դարձն ու ապրելը»[3]: Եվ որ մի ուրիշ տեղ սուրբ Հոգին ասում է. «Երբ որ դառնաս ու հեկեկաս, այնժամ կփրկվես» (կեցցես)[4]: Արդ, երբ պատճառանոք մի կարճ ժամանակ ձեզ համար թողել եմ, այժմ դրա փոխարեն կամենում եմ իսկապես թողնել այս կյանքի ամեն ինչը մինչև վերջ: Եվ ձեզանից ով որ կարող է լինել կամակից, արհամարհելով աշխարհիս ամենայն սուտ վայելչությունները, հանձն եմ առնում՝ ձեզ հետ միասին, Քրիստոսի անվան համար ընտրել օտարություն գնալը»:*

*Այսպես խոսեց նա իր տան ու ընտանիքի հետ: Եվ իր երանելի եղբայր Հմայակը պատասխանեց նրան, ասաց. «Շտապի՛ր կատարել մտածածդ և մի՛ հապաղիր, քանզի ոչ ոք չի կարող երաշխավոր լինել իր կյանքի համար, և ո՛չ մի ժամ»:*

*Եվ, այսպես, միահամուռ արհամարհելով՝ ոչինչ համարեցին այս կյանքի ամեն տեսակ անիմաստ մեծությունները և իրենց հետ միաբանած պալատով ու ընտանիքով ճանապարհ ընկան, շտապելով դեպի Հունաց երկիրը, ուր որ միաբանությամբ թաքնված կամ այս ու այնտեղ ցրված՝ կարող էին իրենց անձերը պաշտպանել: Եկան, հասան մի գյուղ, որի անունն է Արամանա ու գտնվում է Բագրևանդ գավառում և մոտ ու սահմանակից է Բասենին և Տվարածատափին[5]: Ցանկանում էին մի քանի օր հանգստանալ այստեղ, ապա շտապով գնալ իրենց մտքում դրած ճանապարհը:*

*Հայոց մեծ սպարապետ ու Մամիկոնեից տեր Վարդանի և իր եղբայրների՝ պալատով, ազգուտակով հանդերձ՝ Հայոց աշխարհից գնալու այս խորհուրդը հանկարծ հայտնեցին Սյունյաց իշխան Վասակին, որն այդ ժամանակ մարզպանն էր Հայոց: Իմացան նաև Հայոց բոլոր տանուտերերն ու սեպուհները, որոնք դրանից կոտրված սրտերով սարսափեցին: Ամենքը, որ իրենց անձերի փրկության նախանձախնդիր էին, մտածում էին, թե արդեն կորան իսպառ, և ոչ մի հնար չունեն այս չարից ազատվելու, քանզի բոլորն էլ գիտեին ու հասկանում էին, որ Հայոց երկրում դեռ գլուխ չէր եկել որևէ գործ կամ նախաձեռնություն առանց այն տոհմի առաջնորդության: Սյունյաց իշխան Վասակը, հայոց ամենայն տանուտերերով ու ավագ սեպուհներով հանդերձ՝ խորհուրդ արեց և իր կամքի հետ համաձայնեցրեց բոլորի մտքերը, երբ ասաց. «Անհրաժեշտ է անմիջապես ընտիր քահանաներից ու հայոց ավագ տանուտերերից մի քանիսին ուղարկել հայոց զորավար Վարդան Մամիկոնյանի ետևից և աղաչանքով նրան վերադարձնել այստեղ, քանի որ առանց նրան մեր կամքն ու խորհուրդները չեն իրականանա»:*

*Սյունյաց իշխան Վասակը նամակ գրեց, կնքեց իր մատանիով և հրամայեց, որ Հայոց բոլոր ավագ տանուտերերը ևս նամակներ գրեն և յուրաքանչյուրի նամակը կնքել տվեց նրա իսկ մատանիով: Բերել տվեց նաև ուխտի կնքած Ավետարանը: Ապա պատվական քահանաներից ընտրեցին երանելի Ղևոնդ երեցին, Նոր քաղաքից երանելի երեց Երեմիային, Մրենից երանելի երեց Խորենին և Հայոց տանուտերերից ավագ մարդկանց՝ Արշարունյաց Արշավիր իշխանին, Դիմաքսենից Հմայակ իշխանին ու Աբեղենից Գագրիկ իշխանին: Եվ Սյունյաց Վասակ իշխանը նրանց հանձնելով ամբողջ նամականին ու երդման Ավետարանը, դեսպաններ ուղարկեց նրա ետևից, որոնք հասան վերոհիշյալ Արամանա գյուղը և գտան նրան ու իր հետ գնացածներին:*

*Եվ տեղեկություն տալով՝ նախ մտան Մամիկոնեից տեր ու Հայոց սպարապետ երանելի Վարդանի, նրա եղբայրներ Հմայակի ու Համազասպի մոտ, նրանց առաջ պատմեցին իրենց այսպես չտապ գալու և նրանց հասնելու պատճառները, խորհուրդն ու խոսքերը, որ երդմամբ հանդերձ ունեցան բոլոր հայերը՝ Սյունյաց իշխան Վասակի միաբանությամբ: Ապա տարան նաև երդման Ավետարանը՝ այն բռնեցին երանելի Վարդանի ու նրա եղբայրների առաջ: Եվ նրա ձեռքը տվին Սյունյաց տեր Վասակի, Հայոց մյուս ազատների, եպիսկոպոսների ու սեպուհների նամակները և, ներկայացնելով բոլորի կարճառոտ պատգամի խոսքը, երանելիին ասացին. «Ահա դու՝ եղբայրներովդ ու քեզ հետ միաբանած ընտանիքովդ, որոնք համբերաչխնելով քեզ հետ, հոգացել են, որ քեզ հետ ապրեցնեն իրենց, ձեր անձերն եք պրծացնում: Իսկ մենք ամենեքյան մատնվում ենք հավիտենական կորստի: Քանի որ ո՛չ մենք, ո՛չ մեր զավակներն առանց ձեզ ոչ մի հնար չունենք փրկվելու և ապրելու, ապա ինչպես որ հոգալով խնամք եք տանում ձեր նկատմամբ, այնպես էլ մի՛ թողնեք, որ կորչեն այսքան մարդիկ: Եվ քանզի այստեղ են բազում մարդիկ՝ ձեր ազգից, ձեր արյունից, ապա մեզ էլ արժանացրեք Քրիստոսի պսակին, ինչպես որ ցանկանալով հոգում եք միայն ձեր արժանանալու մասին»:*

*Եվ եկած քահանաներից ու նախարար պատգամավորներից այս բոլոր խոսքերը լսելով, Հայոց սուրբ սպարապետ և Մամիկոնեից տեր Վարդանը՝ իր երանելի եղբայրներով հանդերձ, տեսնելով սուրբ ուխտի Ավետարանը և կարդալով նամականին Սյունյաց իշխան և Հայոց մարզպան Վասակի ու նրա բոլոր ընկերակիցների,– բոլորի հետ միաբանելով՝ պատասխան տվեց, ասաց. «Ես, իմ եղբայրները և իմ ընտանիքը որոշել ենք ընտրել աշխարհում եղած ամեն ինչից ամենավսեմը՝ հոգիների փրկությունը և սովորած ենք հաստատ ու անփոփոխելի այն խոսքը, որին մենք հավատում ենք աներեր, և որն ասում է. «Ի՞նչ օգուտ այն մարդուն, որն ամբողջ աշխարհը պիտի նվաճի և իր անձը կորցնի, և կամ մարդ ի՞նչ փրկագին պիտի տա իր անձի համար»[6]: Մենք ցանկանում ենք ոչ միայն մեր հոգիների օգուտը, այլև ուրիշների փրկությամբ ենք ուրախանում: Հետո էլ, թող որևէ մեկը չկարծի, թե մենք փախել ենք սրի երկյուղից, որից մեր տոհմի մեջ ոչ ոք մի ժամանակ չի վախեցել: Իսկ թե ինչպես ընկերոջ շահի համար առավել, քան իր սեփական շահի մասին է հոգացել՝ իր անձնականը դրած այս տոհմը, այդ էլ դուք բոլոր հայերդ ճշգրտությամբ գիտեք գրքերի պատմությունից և ձեր ավագների պատմածներից: Բայց ձեր այն նենգավոր խաբեությունից, որ դուք գործել եք միշտ մեր նախ-*

*ների նկատմամբ,– այդ բոլորը հիշելով էլ՝ գնացինք մեր անձերը պրծացնելու: Դուք չարունակ մեզ մղել եք նեղության, և ձեր անձերից հեռու մնալով՝ միայն մեր տոհմին են վիճակվել մեծ վշտերն ու մահերը: Սակայն Ավետարանի այդ սուրբ ու երկնավոր հրավիրակին դեմ չի կացել մեր տոհմից ո՛չ մեկը, և ո՛չ էլ մենք ենք դեմ: Քա՛վ լիցի: Դուք միամտությամբ եք վարվում, թե երկմտությամբ, ձեր գործն է: Բայց սուրբ Ավետարանը ճանաչում է բոլորին և յուրաքանչյուրին դատում է ըստ իր գործերի»:*

**Գլ. ԼԱ.** *Եվ այս ասելով սուրբ այր Վարդանը՝ Մամիկոնեից տեր և Հայոց սպարապետ, իր երանելի եղբայրների ու սիրելիների կամակցությամբ այնտեղից դարձավ իր ընկերների մոտ՝ Հայոց բանակը: Եվ բազմության հետ միաբանության գալով՝ Հայոց սպարապետ Վարդանն իր խորհուրդներով դադար ու հանգիստ չէր տալիս ոչ միայն իր պալատի քահանաներին ու պաշտոնյաների մնացած բազմությանը՝ իր պալատում առտնին կատարելու կարգված ժամերի արարողությունները, որ գիշեր ու ցերեկ անհապաղ կատարում էին անձանձիր,– այլև ցանկանում էր եկեղեցի գնալ բոլոր հայերի հետ միասին: Եվ, չնայած նեղված էր չգնալով այլև կամովին իրեն արգելելով, առժամանակ տանում էր վիճակը, հոգալով ընկերների պետքերը, ինչպես իր տան ու անձի համար, մանավանդ վրաց բդեշխ Աշուշայի և Սյունյաց իշխան Վասակի որդիների, որոնց պատանդ պահեց այնտեղ՝ իր պալատում Հազկերտ թագավորը պարսից: Եվ Սուրբ Վարդանն այսպես հոգում էր ոչ թե իր առաջադիր գործին օժանդակելու համար, քանզի նա չէր մտածում հաղթական անուն վաստակելու մասին, այլ եկեղեցու միաբանության սուրբ շինության վրա իր անձի արյան հեղումն էր տենչում: Բայց և հոգում էր իբրև բարեսեր մի այր, մտածելով, թե գուցե այն մարդիկ մի դժվարության հանդիպեն կամ վնասվեն թագավորի մոտ:*

*Բայց Ամատունյաց Վահան իշխանը քուն ու հանգիստ չէր տալիս Հայոց զորավար Վարդանին: Մերթ ինքն անձամբ, մերթ էլ ուրիշների միջոցով ստիպում էր շտապ հայտնել ապստամբության գործի վիճակի մասին՝ ցույց տալով, որ դա՛ է հոգու փրկության հոգածությունը: Սակայն շատ էլ չմտածելով այդ հոգսի շուրջ, նա խոսքով շտապեցնում էր գործը՝ կուտակած այն թշնամության պատճառով, որ ունեին իրար դեմ Սյունյաց Վասակ իշխանն ու Ամատունյաց տեր Վահանը: Սակայն իր խորաթափանց մտքով տեսնում էր, որ Սյունյաց Վասակ իշխանը կամ չհամաձայնելով ապստամբել՝ կմեռնի իր ընկերների անարժան մահով, կամ վտանգից դրդված կհամաձայնի՝ չարաչար*

*վիճակի վտանգելով արքունիքում պատանդված երկու որդիներին, որոնք կսպանվեն կամ բազմաժամանակյա կապանքների ու բանտարկությունների ենթարկվելով կտանջվեն անխնա։*

*Իսկ սուրբ այրն Աստծո, Մամիկոնեից տեր ու Հայոց զորավար Վարդանը ոչ մեկի խոսքին չէր նայում, այլ ընկերների հոգսն էր քաշում և գնում էր դեպի բաղձալի նահատակություն։ Եվ այսպես ձգելով գարնան երկար օրերն անցկացրեց՝ մինչև տոթ օրերի մոտենալը։ Եվ երբ հասան ջերմ տոթի ամիսները, Հայոց ամբողջ բազմությունը չվեց դեպի հովոց տեղիները, եկան-հասան Ծաղկոտն կոչված գավառը, այն ամուր բերդի մոտ, որ Անգղ էր կոչվում։ Այն տեղերը տղամարդկանց բանակատեղ դարձնելով՝ մնացին տոթ օրերին։*

***Գլ. ԼԲ.** ...Ապա Հայոց սպարապետ Վարդանն, իմանալով, որ ապստամբության գործը հույժ հայտնի են դարձնում և այն չատ ուշացնելուց մեծ վնասներ կլինեն, չատ օրեր խորհուրդ անելով, պատվական եպիսկոպոսներին,ականավոր երեցներին և Հայոց ավագ տանուտերներին ու սեպուհներին հավաքեց առանձին։ Այն ժամանակ նա դեռ չէր կամենում իրենց խորհուրդը հայտնել Հայոց մարզպան Վասակին։*

*... Ապա Հայոց բոլոր տանուտերներն ու սեպուհները՝ քահանաների ու ժողովրդի բազմությամբ, կուռ միաբանությամբ և բացահայտ հավաքվեցին Հայոց երանելի սպարապետ ու Մամիկոնեից տեր Վարդանի մոտ և նրա հետ միասին իսկույն, ըստ Սուրբ Գրքի հրամանի, բոլորեքյան մտան Սյունյաց իշխան Վասակի՝ Հայոց մարզպանի մոտ։ Եվ նրան հայտնելով բոլորի միահամուռ խորհուրդը, թեպետ և նա ջանում էր հապաղել, մեկ՝ իր որդիների համար, որոնք արքունիքում էին, և երկրորդն, իր կյանքն իսկ միշտ միտված է եղել դեպի չարը,– երբեք այնուհետև թույլ չտվին, որ նրա մտքերը սայթաքեն այս ու այն կողմ։ Եվ թեպետ չէր կամենում, սակայն հարկադրաբար հանձն առավ միաբանել նրանց հետ։ Եվ Հայոց նախարարները սուրբ եպիսկոպոսներին ու երեցներին հրամայեցին դարձյալ բերել սուրբ ուխտի Ավետարանը։ Եվ ազատների ու անազատների զորաց ամբողջ բազմությունը, Սյունյաց իշխան Վասակի և բոլոր տանուտերների ու սեպուհների հետ միասին, երդվեցին և իրենց երդումը հաստատեցին։*

*Եվ հավատո ուխտի խոսքերը գրի առնելով ու կնքելով նախ Սյունյաց իշխան Վասակի մատանիով, ապա Հայոց բոլոր տանուտերների ու ավագ սեպուհների մատանիներով՝ դրված երդման Սուրբ Ավետարանի մեջ՝ տվին այնտեղ գտնվող պատվական եպիսկոպոսներին ու ավագ քահանաներին։ Եվ այս բոլորն այսպես ավարտելով՝ մեծ*

*խանդավառությամբ ու հոգևոր երգերով դիմեցին դեպի տունն Աստծո և, երկրպագելով միայն մեկ ճշմարիտ Աստծուն, աղոթքները կատարեցին կարոտալից, երկար ու անձանձրույթ ծնրադրությամբ:*

*Աղոթքներն ավարտած ռամիկ զորքերի բազմությունն, առանց սպասելու ավագների հրամանին, դիմեց դեպի մոխրանոցի տունը: Եվ այնտեղ կրակարանն առնելով՝ կրակը ջրի մեջ թափեցին՝ իբրև եղբոր գիրկը, ինչպես պարսից սուտ վարդապետներն էին անվանում: Իսկ ջուրը ո՛չ թե եղբայրաբար, այլ թշնամաբար կրակին ոչնչացրեց:*

*Բայց կարգադրեցին այդ օրն զգուշությամբ պահել մոգերի բազմությունը: Եվ առավոտյան արևածագին նրանցից ոմանց սրով սպանեցին Զարեհավան գյուղում:*

***Գլ. ԼԳ.** Եվ այս բոլոր գործերը կատարելով ըստ ասածներիս կարգի, նրանք այնտեղ անցկացրին տոթ օրերը: Ապա շտապեցին իջնել Այրարատ գավառը, քանզի լսեցին, թե արյաց հազարապետ Միհրներսեհը եկել Փայտակարան քաղաքը, գունդ է կազմում և Աղվանքի վրայով պետք է հարձակվի Հայքի վրա: Աղվանքի ազատներն էլ, որ հայոց ուխտակիցներն էին, խիստ շտապեցնում էին՝ հասնելու իրենց մոտ և այնտեղ՝ Աղվանքում պատերազմելու նրանց դեմ:*

*Գալով Այրարատյան գավառը և Աղվանից կողմից այս լուրն առնելով, Սյունյաց Վասակ իշխանը հայոց երանելի սպարապետ ու Մամիկոնեից տեր Վարդանին ստիպում էր գնալ և զորքով դիմակայել նրանց: Իսկ ինքն այնտեղ մնաց. պատճառաբանելով, թե «Ես այստեղ պատրաստվեմ. գուցե, ասում էր, ուրիշ բան իմանալով՝ այն չարախորհուրդ Միհրներսեհը գործելու է մեր դեմ»:*

*Սակայն Վասակն ինքը խաբեության ճանապարհն էր բռնել՝ իր մտքում կամակից ու խորհրդակից ունենալով աստվածանենգ ուրիշ մարդիկ հայոց ազատներից:*

*Եվ հայոց երանելի սպարապետ ու Մամիկոնեից տեր Վարդանը Սյունյաց իշխան Վասակին ասաց. «Ինչպես մտածել էինք, մենք նախ պետք է ճանապարհենք նրանց, որոնց կայսրի մոտ ենք ուղարկելու: Այնուհետև ինչ որ հրամայես, կկատարեմ անխափան»: Եվ սա, իր առաջ դրված խնդիրը չտապ իրականացնելու համար, հանձն առավ երանելի սպարապետ Վարդանի ասածները կատարել:*

*Անմիջապես ու շուտափույթ նամակներ գրեցին կայսրին, հունաց արքունիքի ամենայն ավագանուն և ուրիշ իշխանների ու կուսակալների, Աղձնյաց բդեշխին, Անգեղ տան իշխանին, Ծոփք, Հաշտյանք, Եկեղիք և այլ գավառների մյուս իշխաններին ու Անտիոքի մեծ սպարապետին[7]: Եվ այս բոլոր թղթերը նախ ինքը՝ Սյունյաց Վասակ իշ-*

*խանն էր կնքում իր մատանիով, ապա Հայոց մյուս բոլոր տանուտերները: Հունաստան ճանապարհվելու համար պատրաստվեցին. Ամատունյաց տան իշխան Վահանը՝ որպես խելամիտ ու խոհական մարդ, սուրբ Հմայակ սեպուհը՝ Հայոց երանելի զորավար Վարդանի եղբայրը՝ Մամիկոնյան տոհմից, և սուրբ Աղանի եղբայր երանելի Մեհրուժանը՝ Արծրունյաց տոհմից: Սյունյաց իշխան Վասակն ու Հայոց աշխարհի բոլոր նախարարները, նամականին նրանց ձեռքը տալով, ճանապարհեցին կայսրի ու վերը հիշված հայոց բոլոր մեծամեծների մոտ:*

***Գլ. ԼԴ.*** *Հայոց սպարապետ և Մամիկոնեից տեր երանելի Վարդանն իր հետ էր վերցրել հայոց տանուտերներից նրանց, որոնք ջերմեռանդ սիրով շտապում էին հասնել մարտիրոսության ժամին: Սրանք էին.*

**Խորեն Խորխոռունին,**
**Արշավիր Կամսարականը,**
**Թաթուլ Դիմաքսյանը,**
**Արտակ Պալունին,**
**Վահևունյաց Գյուտը,**
**Հմայակ Դիմաքսյանը**

*և այլ տանուտերներ ու սեպուհներ և շատերը հայոց զորքից, որոնք փութով ինքնահոժար փափագում էին վրեժխնդիր լինել հանուն եկեղեցու սուրբ ուխտի և իրենց անձերը մահու տալ Քրիստոսի սուրբ ու ճշմարիտ հավատի համար: Այնտեղ էին նաև Մարդպետական այրուձիի[8] ուրիշ գնդեր, որոնք պատրաստ էին առաքինության պատերազմին: Սյունյաց չարախորհուրդ Վասակ իշխանն, իմանալով, թե ով համաձայն չէ իր չար մտադրությանը, պատրաստեց և ուղարկեց նրա հետ: Իսկ հայոց երևելի տանուտերներից ու սեպուհներից և ուրիշ ռամիկ բազմությունից ում շատ վատթար կողմերին էր ծանոթ և գիտեր, որ ուղղակի կողմնակիցը չէ ուխտի, նրանց բռնությամբ պահում էր իր մոտ:*

*Հայոց երանելի զորավար և Մամիկոնեից տեր Վարդանը, իր ընկերներին և ուրիշ զորական մարդկանց հետ, որոնք իր հետ էին, հրաժեշտ տալով Սյունյաց իշխան Վասակին ու նրա հետ մնացող ավագներին, ողջախորհուրդ մտքով գնում էր պատերազմի: Եվ ամենակալ Աստծուն երկրպագելու համար մտնելով Աստծու տունը, որ սուրբ եկեղեցին է, առավ սուրբ Ավետարանը և կենսատու խաչի նշանը, համբուրեց, անհագորեն դրեց աչքերին ու ճակատին: Ջերմեռանդ*

*սիրով նույնն էին անում բոլոր նրա հետ գնացողները: Ապա բոլորը ճանապարհվեցին հորդորալից սիրով:*

*Դեռ Այրարատից ոչ շատ կայարաններ էր հեռացել Հայոց սպարապետ երանելի Վարդանը, որ Սյունյաց իշխան Վասակը շտապով գաղտնի դեսպաններ ուղարկեց Արյաց հազարապետ ՄիհրներսեՀին և իր նենգավոր խորհուրդը հայտնեց նրան: Նույնպիսի նամակ հղեց նաև Նիխորական Սեբուխտին և այլ ավագների, որոնց Միհրներսեհն էր կարգել հայոց վրա: Հղեց հավատարիմ վերակացու Վեհշապուհին, որն այն ժամանակ արքունի սենեկապանն էր, ապա հետո էլ եղավ Արյաց դպրապետը: Նամակներում Սյունյաց նենգավոր իշխան Վասակը նրանց հայտնում էր իր խաբեական ցանկությունները: «Դուք,— ասում էր,— անհոգ եղեք և մի զարհուրեք Վարդանի հետ ձեր դեմ եկողներից, քանզի ավելի շատը նրանք են, որ պահել եմ ինձ մոտ և բազմաթիվներին էլ այս ու այնտեղ եմ ցրել: Իսկ ձեր դեմ եկողները խիստ փոքրաթիվ են և ոչ շատ»:*

***Գլ. ԼԵ.*** *Հայոց զորավար երանելի Վարդանը՝ տերը Մամիկոնեից, հասավ Աղվանք, և պարսից զորագլուխներին հայտնվեց հայերի գալու մասին: Պարսիկները լսեցին և փութացան անցնել Կուր կոչված մեծ գետը և նրանց ընդառաջ եկան մինչև Աղվանք երկրի Խաղխաղ կոչված գյուղը:*

*[Հայոց զորքերը] հասնելով մարտի ժամին՝ նայեցին և տեսան պարսից գնդերը դասավորված ըստ պատերազմական կարգի: Հայոց երանելի զորավար Վարդանը ևս իր գունդը դասավորեց նրանց դեմ: Մեծաթիվ այրուձին բաժանելով երեք մասի, յուրաքանչյուրը տվեց մի զորագլխի ձեռը. աջ կողմում զորագլուխ կարգեց Արշարունյաց իշխան Արշավիր Կամսարականին, որ և փեսան էր հայոց զորավար սուրբ Վարդանի՝ Մամիկոնեից տիրոջ, ամուսնացած լինելով նրա դստեր հետ: Եվ (Վարդանը) նրան նիզակակից տվեց ավագ սեպուհ Մուշեին՝ Դիմաքսյան տոհմից: Իսկ ձախ կողմը տվեց Խորեն Խոռխոռունու ձեռքը՝ նրան զորավիգ դարձնելով Հմայակ Դիմաքսյանին: Հայոց սուրբ զորավար Վարդանն ինքն էլ պատրաստվեց կենտրոնի վրա հարձակվելու: Եվ այսպես ճակատ կազմած և ապավինած Աստծո խնամքին, հարձակվեցին թշնամիների վրա:*

*Բոլորից առաջ մարտի վայրը գնացին Արշավիր Կամսարականն ու Դիմաքսենից սեպուհ Մուշը, որոնք տեղի անծանոթությունից հանդիպեցին սաստիկ թանձրախոր ճահճուտի: Արշավիր Կամսարականն ու Մուշը երիվարների առավելագույն ընթացքի պատճառով տիղմի մեջ ընկան երիվարներով ու խրվեցին: Այնտեղ նահատակությամբ*

*պսակվեց երանելի սեպուհ Մուշ Դիմաքսյանը Նիխորականից: Իսկ Արշավիր Կամսարականը, իջնելով երիվարից, հետիոտն սպանեց Լփնաց թագավորի եղբայր Վուրկին և իր ձին դուրս քաշելով սաստիկ խոր տիղմից, ուր և ոտնամանի մեկը ոտքից դուրս գալով՝ թաղվեց-մնաց այնտեղ, ճահճուտում, և ինքը՝ Կամսարականը մեկ ոտնամանով, տղմաթաթախ, բոլոր իր զենքերով, երիվարը ցամաք հանելով՝ անվեհեր ու քաջաբար, թռչնի պես թռավ երիվարի վրա և սարսափեցնելով իր թևի թշնամիներին՝ փախուստի մատնեց: Եվ նայելով հայոց երանելի սպարապետ ու Մամիկոնեից տեր Վարդանը՝ իր ընկերակիցների ու ամենայն հայոց գնդի հետ միասին, տեսավ, թե ինչպես նրանց փախուստի մատնելով՝ իրենց առաջը քշեցին պարսից զորքի բազմությունը, որի կեսն իրենց սրերով կոտորեցին՝ գետնի վրա դիաթավալ անելով, կեսն էլ գետավեժ անելով խեղդոտեցին: Նրանցից մնացած մյուսներին էլ դաշտերում ու թանձրախիտ անտառներում ոչնչացրին:*

*Իսկ պարսից ավագներից ոմանք, նավեր նստած, շտապում էին փախչել մեծ գետի այն կողմը: Հայոց երանելի զորավար Վարդանն Արշարունյաց իշխան Արշավիր Կամսարականին ստիպեց շտապով նետեր արձակել նավով փախչողների ետևից, որովհետև վստահ էր նրա դիպուկ ու անվրեպ նետաձգության վրա: Իսկ Արշավիր Կամսարականը, ինչպես որ միշտ էր սուրբ զորավարի խոսքն ու կամքը հլու կատարող, շտապ իրագործելով նրա հրամանը, նավավարների ու փախստականների ետևից նետեր արձակելով և խոցոտելով նավավարներին ու շատ ուրիշների, որոնք նավերի մեջ էին, սաստիկ վերքեր հասցրեց նրանց: Վիրավորների տապալվելուց նավերն էլ կործանվում էին, և նավավարներից ու պարսիկ գլխավորներից շատ-շատերը գետասույզ լինելով կորան: Եվ այսպես վերին օգնությունը նրանց հաղթանակ շնորհեց, ու նրանք իրենց բանակը դարձան՝ գոհացած և օրհնելով Աստծուն:*

*Եվ զորքն այն օրը մնաց տեղում, իսկ առավոտյան չվելով անցավ Կուր կոչվող մեծ գետը և հասավ այն պարսպապահակին, որ գտնվում է Աղվանից ու Հոնաց իշխանությունների միջև: Այնտեղ գտնելով պարսպի պահապանին ու պարսիկ ուրիշ շատ զորականներին, սրի քաշելով կոտորեցին ու պահակությունը հանձնեցին աղվան մի թագավորազնի, որի անունն էր Վահան: Հենց նրան էլ դեսպան ուղարկեցին Հոնաց երկրում և ուրիշ ամուր տեղերում բնակվողների մոտ՝ որպեսզի նրանց համոզի զորքով միաբանել իրենց հետ: Նրանք էլ հոժարակամ համաձայնեցին օգնել, որը և երդումով հաստատեցին:*

***Գլ. ԼԶ.*** *Եվ մինչդեռ այս ամենն այսպես կատարվում էր Աստծո օգնությամբ ու նրանց կամքով, հանկարծակի դեսպան հասավ հայոց երանելի զորավար **Վարդանին** ու նրա հետ եկած ամբողջ զորքին: Նրանց հասցրեց տրտմության գույժ ու չարաչար համբավ՝ ասելով, թե «Անօրեն **Վասակը** խաբել է Աստծո ուխտին, նենգելով դրժել Ավետարանի երդումը և ետ կանգնելով՝ ապստամբել ճշմարիտ միաբանության դեմ: Այդպես էլ նրա մոտ մնացած հայոց ավագները, ետ կանգնելով, միացան նրա հետ և, իրենց երեսները դարձնելով արդարության ճանապարհից, մոլորված գնացին սատանայի ետևից: Դեսպան ուղարկեցին Պարսկաստան և նամակներով ուխտ կապեցին նրանց հետ: Հայոց ամրոցների բերդապահներին արձակելով՝ իրենց մարդկանց բերդակալներ նշանակեցին և զգուշացրին: Մամիկոնյան, Կամսարական և ուրիշ տանուտերների որդիներին դայակներից խլելով, հավաքեցին, անց կացրին Սյունյաց իշխանության ամուր բերդերը և հրամայեցին ամրոցները պահպանել զգուշությամբ: Ապա նենգավոր **Վասակը** երեխաներին տվեց տանելու պարսից թագավորի մոտ: Եվ ուխտանենգ **Վասակի** հետ սատանայի ետևից խոտորվածները սրանք էին.*

*Բագրատունյաց իշխան* **Տիրոցը**,
*Խորխոռունյաց իշխան* **Գադիշոն**,
*Ապահունյաց իշխան* **Մանեճը**,
*Վահևունյաց իշխան* **Գյուտը**,
*Պալունյաց իշխան* **Վարազշապուհը**,
*Աբեղենից իշխան* **Արտենը**,
*Ուրծա իշխան* **Ներսեհը** *և ուրիշները ոստանիկներից, ինչպես նաև սեպուհներից ոմանք յուրաքանչյուր տոհմից»:*

*Եվ լսելով աղետավոր այս ամբողջ գործի մասին, որ Սյունյաց նենգավոր իշխան **Վասակն** ու նրա հետ եղած նախարարներն էին կատարել, հայոց երանելի սպարապետ, Մամիկոնենից տեր **Վարդանը**, նրա մոտ գտնվող նախարարները և զորքը չէին կարող չտրտմել:*

*... Ապա բոլորը միասին Աղվանից աշխարհից գնացին Այրարատյան գավառը:*

***Գլ. ԼԷ.*** *Ձմեռային ցրտաշունչ եղանակի օրերն անցկացնելով՝ բոլոր ուխտավորները հասան Մեծ տոնին, և խնդություն եղավ ամենայն աշխարհին, հրեշտակներին ու մարդկանց քանզի կենարարի ավետավոր հարությունը*[10] *խառնվեց խաղաղությանը, և մարդիկ ուրախությամբ տոնեցին ու զվարճացան:*

*Մի քանի օր անց լսեցին, թե անհամար զորք է եկել Հեր ու Զարևանդ գավառները: Եվ հայոց երանելի սպարապետ, Մամիկոնեից տեր Վարդանն ազդարարեց այն ուխտապահներին, որոնք տոնի օրերի պատճառով իրենց տներն էին գնացել, թե զատկի տոնը կատարեցեք ձեր ընտանիքների հետ:*

*Եվ հայոց երանելի սպարապետ Վարդանը, իր հետ եղած ավագների միաբանությամբ, Ամատունյաց տոհմից մի սեպուհի, որի անունն էր Առանձար, երեք հարյուրի չափ հեծյալներով ուղարկեց հետախուզելու պարսից զորքերի բազմությունը և, եթե հնար լիներ, գրգռելու, որ շուտ գան և մեզ բերեն արքայության պսակներ, որոնք նրանց ձեռքով մեզ է պարգևելու հավիտենական բարությունների տվող ու փրկիչ Քրիստոսը: Առանձարին ու նրա հետ գնացած զորքին բախտ շնորհվեց, որ նրանք տեսնեն պարսից բանակը: Եվ հարձակվելով վերջապահ հզոր մի թևի վրա, շատերին սրի անցկացրին, իսկ մյուսներին փախուստի մատնելով թափեցին պարսից զորքերի մեջ: Իրենք էլ ողջանդամ վերադառնալով ուրախությամբ հասան հայոց զորքերին և նրանց պատմեցին Աստծո այն զորության մասին, որ իրենց պարգևեց Փրկիչը:*

*Եվ երանելի սպարապետ Վարդանը միահամուռ զորքերի հետ միասին գոհացան ու օրհնեցին ամենազոր Աստծուն: Պատմեցին, որ զորագլուխներ են Մուշկան Նյուսալավուրտը և Դողվճը: Սթափությամբ հասկացրին նաև, որ նրանք շուտով կարող են հասնել երկրի միջնաշխարհը: Որն էլ լսելով հայոց երանելի սպարապետն ու նրա հետ գտնվողները՝ շտապեցին երթալ նրանց դեմ, նախ՝ ավելի շուտ հանդիպելու մարտիրոսության ժամին, քանզի գիշեր ու ցերեկ, միշտ ու անձանձրույթ աղոթում էին, որ արժանի լինեն մի այդպիսի երկնավոր վիճակի. և, երկրորդ ասում էին՝ թերևս այնտեղ, հենց Հեր ու Զարևանդ գավառում էլ վճռենք պատերազմի ելքը, մանավանդ, որ պարսից զորքին ոչ ոք չէր արգելում հասնելու Հայոց աշխարհը՝ սպանությամբ, գերեվարությամբ ու ավերածություններով: Եվ սրանք, թեպետև այսպես մտածելով, ուզում էին շտապել, սակայն առավել արագ շարժվում էր պարսից զորքը, որ արդեն եկել-հասել էր Արտազ գավառը, Ավարայր կոչված գյուղի մոտ, Տղմուտ դաշտի շրջափակ տեղում, որն ընտրել էին հայոց զորքի երկյուղից: Մարդկանց ամուր ապաստանի պատշաճ տեղ համարեցին այնտեղ վրան զարկելով բանակեցին:*

***Գլ. ԼԸ.*** *Պենդեկոստեի մեծ տոնի ուրբաթ օրը[11] հայոց զորքերը եկան, հասան նույն տեղը:*

*Այնուհետև հավաքվելով բանակ դրին պարսից զորքերի մոտ, մինչև օրն ավարտվեր:*

***Գլ. ԼԹ.*** *Քանի որ մոտեցել էր արդեն արևագալի ժամը, և պարսից զորքերն էլ պատրաստվում էին պատերազմի ճակատ հարդարելու, Մամիկոնեից տեր Սուրբ Վարդանն իր զորքը բաժանելով երեք թևի, կենտրոնականի վրա ավագ կարգեց Արծրունյաց իշխանին և մարդպետ Միհրշապուհին՝ Արշարունյաց Արշավիր իշխանի, երանելի այր Մոկաց Արտակ իշխանի և այլ ավագ նախարարների հետ միասին: Աջակողմյանի վրա ավագ կարգեց երանելի Խորեն մախազին՝ Վանանդի տեր երանելի Թաթուլի, սուրբ այր Քաջբերունի Ներսեհի և այլ ավագ նախարարների հետ: Եվ ձախ կողմից ինքը պատրաստվեց իր գնդով՝ Առավեղյան Փափագ իշխանի և հայոց ուրիշ իշխան-նախարարների հետ միասին, քանզի այն կողմից ավելի էին երևում Սյունի զորական գնդի և այլ զորավոր արանց դրոշների նշանները: Իր եղբայր Համազասպին թողեց վերջապահ և նրան պատվիրեց ոչ ոքի չստիպել, այլ միայն խոսքով հորդորել հանուն իրենց փրկության:*

*Եվ, այսպես, Սուրբ Վարդանի հայոց զորքը, բաժանված երեք մասի, օրհնություն ստացած սուրբ քահանաների բերանով, Աստծուն օրհնաբանելով շարժվեց առաջ: Իրար վրա հարձակվեցին երկու կողմերը՝ հայոց և պարսից: Եվ մեկը մյուսի առաջ էին ընկնում մարտիրոսության պսակը տենչացող տղամարդիկ, որոնք սկզբում փախուստի մատնեցին պարսից զորքերին: Իսկ հայոց զորքի այն բազմությունը, որ եկել էր հարկից դրդված և ակամա, մանավանդ ուրիշներին էլ տարակուսանքի մեջ գցելու և ետ դարձնելու համար, այնտեղից փախուստ տալով՝ հավիտենական կորստով չքվեց:*

*Պարսից զորքերն էլ, տեսնելով, որ հայոց գունդը թուլացել, ուժասպառ է դարձել և չի կարող իրենց կոտորել, տեսնելով նաև այն, որ փախած գնում էր հայոց զորքի մի մասը, շրջապատեցին բոլոր կողմերից, հորդեցին նրանց վրա: Այստեղ էլ երազած վիճակին արժանանալով՝ նահատակվեցին նրանք: Այնուհետև պարսից զորքերն ընկան հայոց փախստականների ետևից: Հասնելով նրանց՝ ոմանց կոտորեցին, ուրիշներին կալանավորելով, մի տեղ հավաքելով՝ փակեցին ամրոցում: Սրանցից ոմանք, գիշերը կտրելով նիզակափակ պաշտպանությունը և պահակներից շատերին կոտորելով, հեռացան ողջանդամ: Առավոտյան հայ փախստականներից ում որ ձերբակալեցին, բերին բանակը, և կոտորեցին սրով, շատերին փղերի ոտքերի տակ ձգելով սպանեցին: Մնացածները փախչելով՝ Հայաստանի այլևայլ տեղերում ցրվեցին:*

*Իսկ նրանք, որ այն ժամին երանելի ու երկնավոր կոչման արժանացան Սուրբ Վարդանի հետ և նահատակվեցին, սրանք էին.*

*Խորխոռունյաց տոհմից՝ երանելի* **Խորենը**,
*Պալունյաց տոհմից՝ երանելի սեպուհ* **Արտակը**,
*Գնդունյաց տոհմից՝ երանելի* **Տաճատը**,
*Դիմաքսենից տոհմից՝ երանելի* **Հմայակը**,
*Քաջբերունյաց տոհմից՝ երանելի* **Ներսեհը**,
*Գնունյաց տոհմից՝ երանելի* **Վահանը**,
*Ընծայնոց տոհմից՝ երանելի* **Արսենը**,
*Սրվանձտա տոհմից՝ երանելի* **Գարեգինը**:

*Եվ ինչպես երկար փնտրելով և շատ քննելով, հարցնելով իմացանք թիվն այն նահատակվածների, որոնք պատերազմի դաշտում զոհվեցին ավագ նախարարների հետ՝ երկու հարյուր յոթանասուն և*



***Ավարայրի ճակատամարտը***
***(Հատված 1482 թ. ձեռագիր Շարակնոցից)***

*վեց մարդ էին: Նրանք, որոնց ամրոցներից հանելով սպանեցին սրով կամ փղատակ տալով կոտորեցին՝ յոթ հարյուր և հիսուն տղամարդ: Բոլորը միասին լինում են հազար և երեսուն վեց մարդիկ, որոնցից յուրաքանչյուրին վարձահատույց Քրիստոսը գրանցած պահում է կենաց մատյանում:*

*Իսկ պարսից զորքերից այնօր պատերազմում ընկան,– ինչպես ստույգ պատմել են մեզ պարսից զորագլուխներից տեղեկացած մարդիկ,– երեք հազար հինգ հարյուր քառասուն և չորս մարդ:*

*Գլ. Խ.* Երբ պատերազմի գործն այսպես ավարտվեց, և մարդասեր Աստվածն իր սիրելիներին իր մոտ կանչեց, Մուշկան Նյուսալավուրտը գիր ուղարկեց Արյաց Հազկերտ թագավորին և տեղեկացրեց պատերազմի արդյունքի մասին, հղեց հաղթանակի ավետիքը և ըստ թվի ու անունների հաշվեց երկուստեք պատերազմում ընկածներին: Եվ Հազկերտ արքան, լսելով պարսից զորքից քաջ մարդկանց կոտորվելն ու մահը Վարդանի, սաստիկ սգի մեջ ընկավ հուզախռով, քանզի հիշում էր այդ մարդու քաջությունն ու բարությունը, որ նա թշնամիների դեմ քանիցս ցույց էր տվել հանուն Արյաց երկրի: Նա հրամայեց պատասխանել թղթին և Մուշկան Նյուսալավուրտին, իր զորքով հանդերձ, կանչել արքունիք: Եվ հրամայեց Հայոց աշխարհից Ատրորմիզդ անունով մեկին նշանակել մարզպան, հրամանով հանձնարարեց չնեղացնել Հայաստանի մարդկանց, այլ սիրով նվաճել և թույլ տալ, որ ամենքը համարձակորեն պաշտեն քրիստոնեական հավատը: Թագավոր Հազկերտի նամակը տեսնելով և լսելով հրովարտակի խոսքերը, Մուշկանը Հայաստանում մարզպան կարգեց Ատրորմիզդ Արշականին և բոլոր գործերը նրան հանձնեց ըստ թագավորի հրովարտակում գրածների: Մուշկանը, բոլոր ավագներով ու զորքով հանդերձ, վերադարձավ Պարսից երկիրը: Եվ Ատրորմիզդը, մնալով Հայոց աշխարհի մարզպան, խաղաղության բազում թղթեր հղեց Հայոց աշխարհի զանազան տեղեր, ասելով. «Եկեք, ձեր երկիրը շենացրեք աներկյուղ և բնավ մի վախեցեք»: Գրում էր և իր ավետավոր խոսքերը կնքում, ամենքին շնորհում քրիստոնեության կարգն ու հավատն իր կամեցածի պես պաշտելու իրավունք: Եվ այս լուրից ուրախացած բոլորն էլ հավաքվեցին Պարսկաստանից ու Սյունիքից:

*Գլ. ԽԱ.* Սա [մարզպանը] երանելի Հմայակի մոտ Տայոց ամրոցներում հավաքվածների վրա գումարեց Պարսից երկրից ու Սյունիքից բերած ընտիր տղամարդկանց, զորք կազմեց: Եվ զորքը երկու մասի բաժանելով, նրանց վրա զորագլուխներ կարգեց Արտեն Գաբեղյանին ու Վարազշապուհ Պալունուն:

Հայոց փախստականների բազմությունը՝ նախարարներն ու սեպուհները, ոստանիկներն ու ռամիկները, գնալով Տայոց երկիրը, հավաքվել էին սուրբ զորավար Վարդանի եղբայր Հմայակի մոտ, որն ուշացել էր Հունաց աշխարհում, երբ գնացել էր թագավորից զորք խնդրելու, ինչպես գրել էինք առաջ՝ իր տեղում: Նրանք գնացելներկայացել էին Թեոդոս թագավորին, որն էլ, իմանալով նրանց այցելության պատճառը, սիրով էր ունկնդրել ու խոստացել էր զորքով օգնել նրանց: Եվ մինչդեռ պատրաստվում էր խոստումը կատարել,

*մահը վրա հասավ սրբին, և նա գնաց այս կյանքից: Նրա փոխարեն թագավորեց Մարկիանոսը, որը և տեղեկանալով իմացավ հայոց գործերի խնդրի կարևորությունը, հարցրեց արքունիքի ավագներին, թե ինչպե՞ս եք կարծում, ի՞նչ պատասխան տանք Հայոց աշխարհից մեզ մոտ եկած մարդկանց: Անատոլը, որ այն ժամանակ Անտիոքի սպարապետն էր, և Փղորենտ անունով մի մարդ, ազգով ասորի, որ ավագն էր թագավորի դրան, ասացին. «Մեզ թվում է անհաճո՝ արհամարհել մի ուխտ և խաղաղություն, որ բազում ժամանակներ ի վեր գրվել ու կնքվել են նախկին թագավորների կողմից: Անհաճո է նաև, որ պատերազմով գրգռվում է խաղաղացված վիճակը, և մի աշխարհ հանվում է իրենց թագավորի իշխանությունից: Բայց անհրաժեշտ է խորհել այդ գործերի անորոշ ելքի վրա. ոչ ոք չի կարող գիտենալ՝ ինչպես կավարտվի այդ պատերազմը՝ հեշտությա՞մբ, թե՞ սաստիկ խառնաշփոթ ստեղծելով»:*

*Այսպես խոսելով՝ նրանք կասեցրին թագավորի մտադրությունը, և հայոց ակնկալությունը չիրականացավ: Հայերը հույսով սպասում էին, սակայն չհաջողվեց: Եվ մինչդեռ խնդիրքի պատասխանն այսպես ուշանում էր, հայոց ու պարսից հարցը, պատերազմի գերաճելով, ավարտվեց:*

*Հունաց աշխարհ գնացած հայոց տանուտերներն ու նախարարները, երբ տեսան, որ ոչինչ չեն շահում այն գործից, որի համար աշխատում էին,– դարձան և շտապեցին, որպեսզի գոնե չզրկվեն փրկության հույսից, արժանի լինեն իրենց ընկերների հետ ըմպելու մարտիրոսության բաժակը: Եվ ժամանակին չհասնելով պատերազմի ընթացքին, Խաղտյաց սահմանների մոտ, Պարխար կոչված լեռան վրա մի ամուր տեղ գտնելով՝ մնացին, որպեսզի որոշեն, թե ինչպես կկարողանան պատրաստվել առաջվա գործին: Առավոտյան դեմ, տեղյակ մարդկանց առաջնորդությամբ նրանց վրա եկան պարսիկները և լուսաբացին զինապատրաստ նույն Հմայակ Մամիկոնյանի ընկերների վրա հարձակվեցին Տայոց գավառի Որջնհաղ կոչվող գյուղում, քանզի այն ժամանակ նրանք արդեն իջել էին Պարխար լեռան ամրոցներից: Փախստական մարդկանցից յուրաքանչյուրն շտապով հասավ յուր երիվարին: Ոմանք մերկանդամ, ոմանք զինված՝ ջարդեցին պարսից զորքից շատերին և կրնկի վրա ետ դարձնելով՝ այնտեղից փախուստի մատնեցին: Նրանցից շատերին շինամիջին, ուրիշներին այգեստաններում գետնատարած կոտորեցին: Այնտեղ նահատակության պսակ ընդունեց երանելի Հմայակ սեպուհը, որ փափագում ու տենչում էր հասնել իր սուրբ եղբոր ետևից: Եվ անմիջապես լսելի եղավ նրա*

*խնդիրքը, որովհետև Աստված, նայելով նրա փափագին, խնդիրքը կատարեց և այն սրբին պսակեց:*

*Իսկ ուխտապահ զինվորները, որ հավաքված էին Հմայակի մոտ, երբ որ այսքանը տեսան, գետնին փռվեցին՝ մեծ սուգ անելով, քանի որ այլևս չունեին ոչ մի մխիթարություն: Յուրաքանչյուր մարդ ինքն իսկ չար մահու և չարաչար կորստյան վճիռը համարում էր կատարված: Զարհուրած այնտեղից դարձան դեպի վեր, դեպի Պարխար լեռը՝ այդ համարելով պատահած մեծ ու ահավոր վշտից ելնելու միջոց: Իսկ Հայոց մարզպան Ատրորմիզդը, լսելով պարսից ու սյունյաց զորքերից այդքան քաջ մարդկանց կորուստը, թեպետև խիստ վիշտ ապրեց, բայց երբ լսեց նաև հրաժարվածներ Սուրբ Վարդանի ու Հմայակի վախճանի մասին, մխիթարվեց և ուրախացավ մեծապես, համարելով, որ խպառ վերացան քաջ զորավարները:*

***Գլ. ԽԲ.** Իրենց մեջ խորհուրդ արին, թե ի՞նչ հնարքով որսան փախստական մարդկանց, առանց պարսից կողմից կռիվ մղելու, ինչպե՛ս նրանց բռնոտեն իրենց իսկ կամքով և հարկի տակ դնեն Հայոց աշխարհը: Այն մտքի վրա կանգ առան, որ առանց կռվի, միայն սուտ երդմա՛մբ ու դատարկ խոստումներո՛վ այն մարդկանց սրտերը կարող են գրավել: Մարզպան Ատրորմիզդը Թագավոր Հազկերտի խոսքերով նրանց մոտ մարդիկ ուղարկեց և խաբեությամբ երդվեց նրանց, թե ձեզնից ոչ մեկին չենք սպանի և ոչ էլ իշխանությունից ու պատվից կզրկենք որևէ մեկին: Այսպես նենգորեն նվաճելով մարդկանց, բռնոտեց բոլորին և քշել տվեց Արյաց երկիր՝ Արծրունյաց մեծ իշխան Ներշապուհին, Վանանդի տան իշխանին, Արշարունյաց տան իշխան Արշավիրին, Անձևացյաց տան իշխան Շմավոնին, Ամատունյաց տան իշխան Վահանին, Գնթունյաց իշխանին, Աչոցաց իշխանին, Առավեղենից իշխան Փափաքին, Տաշրա իշխան Վրենին, Արծրունյաց իշխան Ապրսամին և այլ տանուտերների ու ավագ սեպուհների: Քշեցին, տարան Թագավոր Հազկերտի արքունիքը: Սյունյաց նենգավոր իշխան Վասակն ինքն էլ կամեցավ գնալ արքունիք, սակայն նախ քշել-տանել տվեց նրանց, ապա ինքը գնաց:*

*Իսկ Հայոց սուրբ քահանաներից, որ նախապես բռնել և Սյունյաց բերդերում այս ու այնտեղ կալանավորել էր, սուրբ Հովսեփ երեցն էր, որ այն ժամանակ զբաղեցնում էր կաթողիկոսական աթոռը, տեր Ղևոնդը, Արածա*[12] *քահանաներ տեր Սամուելն ու տեր Աբրահամը: Նրանց հետ բռնած տանում էին նաև Ռշտունյաց սուրբ եպիսկոպոս տեր Սահակին, Արծրունյաց Ներշապուհ իշխանի դրան երեց տեր Մուշեին, սուրբ երեց Արշեին, սուրբ սարկավագ Քաջաջին: Բայց Բա-*

*սենի սուրբ եպիսկոպոս տեր Թաթիկին Սյունյաց իշխանը քսությամբ առաջուց պարսից զորագլուխներին էր տվել տանելու Խուժաստան, և նա այնտեղ պահվում էր ծանր կապանքների տակ: Քշելու էր տվել նաև Մամիկոնյան, Կամսարական և այլ իշխանական տոհմերից իր բռնոտած երեխաներին: Կարծում էր՝ Թագավոր Հազկերտին ու Արյաց աշխարհին մեծ ծառայություն էր անում և դրա դիմաց պետք է ստանա Թագավորական պատիվ ու պարգևներ:*

***Գլ. ԽԳ.*** *Արքունիք հասնելով՝ Սյունյաց նենգավոր իշխանը նախ տեսավ արքունի դրան ավագներին, ապա և մտավ Հազկերտ Թագավորի մոտ: Թագավորն ու արքունի բոլոր մեծամեծները միաժամանակ նրան ընդունեցին մեծարանքներով ու չքեղությամբ: Քանի որ, Թեպետ և գիտեին նրա հասցրած վնասները, ուխտն ու երդումը, որ նենգությամբ արել էր սուրբ Վարդանի ու Հայոց աշխարհի բոլոր իշխանների հետ՝ նրանց կործանելու և իրեն հավատարիմ ցույց տալու համար, սակայն նրան ոչինչ զգացնել չէին տալիս, այլ լռությամբ, իբրև անտեղյակ էին, պատվում էին նրան՝ որպես հավատարիմ ու բարեգործ մարդու, մինչև բերին, արքունիք հասցրին Աստծո սուրբ քահանաներին և ապստամբած հայոց տանուտերների ու սեպուհների զավակներին, որոնց մեջ էին Մամիկոնյան, Կամսարական և այլ տոհմերի ապստամբ տղա մանուկները, որոնց այն նենգավորը նախապես տարավ, կանգնեցրեց հազարապետ Միհրներսեհի և այլ մեծամեծների առաջ:*

*Հազկերտ Թագավորը հրամայեց այնտեղ, բազմության առաջ անարգելով նրանցից խլել ունեցած բոլոր պարգևները: Եվ պայիկները[13] ծաղրանքով մերկացրին նրան: Զրկելով տերության պատվո զարդարանքներից, խայտառակաբար դուրս տարան և արքունի հրապարակի սահմաններից էլ հեռացրին: Եվ նույն օրը Սյունյաց աշխարհի վրա տեր կարգեցին նրա Թշնամի, Սյունյաց սեպուհ, ուրացող Վարազվաղանին:*

*Նենգավոր Վասակն էլ արքունիքում մի քանի տարի մնալով ծանր վշտերով ու չատ նեղություններով, իր կյանքն էր մաշում՝ ամեն օր ու ամեն ժամ հառաչելով և հոգոց հանելով: Մինչև որ իր ձեռքերի Թաթերն անարգալից ինքնածաղրումով զարկում էր իր երեսին՝ ասելով. «Ահա՛, ընդունի՛ր այս խայտառակությունը, որ քեզ բերեցին սուրբ Ավետարանի ուխտին դավաճանելն ու Սուրբ Վարդան Մամիկոնյանի և նրա ցանկալի ընկերակիցների նահատակության արյունը: Ժառանգություն ստանալով հավիտենական կյանքը՝ այս երկրում նրանք վաստակեցին բարի անուն, որն անանց կմնա սերնդե-սե-*

*րունդ: Իսկ դու,– ասում էր,– իմ մեղավոր անձ, կյանքիդ սակավաթիվ օրերը կապրես խղճահարությամբ ու մտատանջությամբ և պատրաստ կպահվես մշտնջենական ու անանց գեհենի համար»:*

*Մինչև իր մահվան օրը նրա այս հառաչալից խոսքերի ու լացի մասին նույն Վասակ իշխանի արդարախոս սպասավորներն են մեզ պատմել: Նրա վախճանն էլ այնտեղ, Պարսից երկրում կատարվեց՝ ըստ Սուրբ Ղևոնդի կանխատես խոսքի:*

*1. **Մատթ.**, Ժ, 23:*
*2. Անդ, Ժ, 37:*
*3. **Եզեկ.**, ԺԸ, 32:*
*4. **Ես.**, Լ, 15:*
*5. **Տվարածատափ** – Տուրուբերան նահանգի գավառներից:*
*6. **Մատթ.**, ԺԶ, 26:*
*7. Ասորիքի Անտիոք քաղաքում էին տեղակայված Բյուզանդական կայսրության արևելյան զորաբանակի հիմնական ուժերը:*
*8. Մարդպետական այրուձին Թագավորական բանակի հիմնական հարվածային ուժն էր, որ բաղկացած էր 40 հազար զինվորից:*
*9. **Սաղմ.**, ԼԲ; հմմտ. **Երեմ.**, Թ, 23:*
*10. Այսինքն՝ Սուրբ Զատիկը:*
*11. Զատկի կիրակիից հաշված հիսուներորդ օրը: Այդ օրը քրիստոնեական եկեղեցին նշում է իբրև Սուրբ Հոգու գալստյան տոն:*
*12. Խոսքը հավանաբար Այրարատյան նահանգի Ուրծ գավառի մասին է: Գտնվել է Դվինից արևելք:*
*13. Պարսկերեն «պայիկ» բառն է, որ նշանակում է «զինված սպասավոր»:*

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄՆ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Է.** Եվ եղավ՝ երբ Հայաստան աշխարհում Արշակունյաց տերությունն ընկավ, և Վռամշապուհ արքայի իշխանությունը վերացավ, Հայաստանի վրա տիրեց Կարքեդովմայեցի իշխանական տոհմը[1]: Իր Թագավորության դառնաշունչ ու մեծամեծ քավդեանների միաբանությամբ և բոլոր գլխավոր նախարարներով հանդերձ [Հազկերտը] ահեղ և սոսկալի որոշում ընդունեց՝ վերացնելու Հայաստան աշխարհից [քրիստոնեական] բարեպաշտության պտուղները: Այստեղից ոչինչ չշահեց, այլ հույժ վնաս կրեց, իսկ բարեպաշտությունն առավել ևս ծաղկեց-փառավորվեց:*

*Արդ՝ չարագործ Հազկերտի Թագավորության ժամանակները՝ Թե ինչպես էր նա կամենում եղծել աստվածային կարգերը, և կա՞մ ինչ-*

պես Հայոց քաջ նախարարները և Աստծու նախանձավորը՝ Մամիկոնյանների տան նահապետ Կարմիր կոչված Վարդանը[2] համագունդ սպառազեն նիզակակից ընկերներով և իրենց զորքերով զինվեցին պատերազմի՝ ձեռքը վերցնելով հավատո վահանը և որպես ամուր զրահ հագնելով աստվածային խոսքի նախանձավորությունը, կարծես թե հենց աչքերի առաջ դեմ հանդիման տեսան ի վերուստ իրենց առաքված պսակը, որի համար արհամարհեցին մահը և առավել լավ համարեցին մեռնել աստվածային պողոտայի վրա, և թե ինչպես նրանց վրա սաստիկ բռնությամբ եկան պարսիկ զորքերը, և կամ ինչպես դիմադարձ կանգնելով՝ կատարեցին իրենց քաջագործությունը, և կամ ինչպես Քրիստոսի սուրբ վկաները հեթանոսների ձեռքն ընկնելով նահատակվեցին, այդ ամենն այլոց ձեռքով գրվեց[3], ինչպես ցույց է տալիս հենց նույն պատմությունը:



Ղևոնդ Երեց
(հատված Գր. Խանջյանի «Վարդանանք» գոբելենից)

1. Անչուշտ, ի նկատի ունի պարսիկներին, սակայն թե ինչ է նշանակում հասկանալի չէ. բառն աղճատված է:

2. Ջափաղանց արժեքավոր ցուցում է, որն ապացուցում է, թե «Կարմիր» հորջորջումը վերաբերում է ոչ թե 571-572 թթ. Վարդան Կրտսեր Մամիկոնյանին, այլ Ավարայրի Վարդան Մամիկոնյանին:

3. Մեկ այլ արժեքավոր վկայություն ևս, որից կարելի է եզրակացնել, թե Վարդանանց պատերազմի վերաբերյալ, բացի Եղիշեի և Ղազարի պատմություններից, եղել են նաև այլ պատմություններ, որոնք, սակայն, մեզ չեն հասել:

## ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑԻՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

*Վաղ ավատատիրական պատմաշրջանի հայկական պատմագրական հուշարձանների շարքում իր բացառիկ տեղն ունի VII դարի պատմիչ Մովսես Կաղանկատվացու «Պատմություն Աղվանից աշխարհի» խորագիրը կրող երկասիրությունը:*

*Սույն պատմությունը բաղկացած է երեք գրքերից: Ուսումնասիրությունները պարզել են, որ առաջին երկու գրքերի (աշխարհի ստեղծումից մինչև VII դարի առաջին կեսը) հեղինակը Մովսես Կաղանկատվացին է, իսկ երկրորդ գիրքը (VII դարի կեսից մինչև X դարի կեսը) հեղինակել է Մովսես Դասխուրանցին, որը ոչ միայն շարունակել է Կաղանկատվացուն, այլև խմբագրել է ամբողջ գործը:*

*«Պատմություն Աղվանից աշխարհի» երկասիրությունը նվիրված է Մեծ Հայքի Արցախ և Ուտիք նահանգների պատմությանը: Հեղինակներն այստեղ ներառել են նաև բուն Աղվանքի (Կովկասյան Աղվանք) պատմության բազմաթիվ դրվագներ, որով երկասիրությունը ձեռք է բերել կովկասագիտական անուրանալի արժեք:*

*Պատմությունը լույս է տեսել բազմիցս (քննական բնագիրը 1983 թ. իրականացրել է Վ. Դ. Առաքելյանը), թարգմանվել է ֆրանսերեն, ռուսերեն, անգլերեն, թուրքերեն, վրացերեն, հունգարերեն: «Հայ մատենագիրներ», մատենաշարով 1969 թ. լույս է տեսել նաև աշխարհաբար թարգմանությամբ (Վ. Դ. Առաքելյան): Ստորև բերվող հատվածները տրվում են ըստ այս հրատարակության:*

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՇԽԱՐՀԻ

### *Գիրք Բ*

*Գլ. Բ.* Անհավատ Հազկերտի ժամանակներում սատանան բորբոքում, գրգռում էր նրան՝ վերացնելու քրիստոնեությունը: Խստագույն հրաման եկավ Աղվանից աշխարհը, որով պահանջվում էր թողնել քրիստոնեությունը և հնազանդվել մոգական աղանդին՝ կրակապաշտությանը: Նույն աղետները միևնույն թագավորի կողմից նյութվեցին նաև Հայաստանում: Բայց Աղվանքի հազարապետը և այս երկրի սուրբ եպիսկոպոսապետը միաբանված դիմում են հայերի հետ դաշինքի. գալիս, պատմում են աղետալից դեպքերն ու խնդրում, որ հայերը մեծ աճապարանքով շտապեցնեն իրենց զորքերը, ասում են. «Պարսից զորքը, որ Հոների երկրում էր, վերադարձավ ու եկավ-

*մտավ մեր երկիրը. նաև մեծ քանակությամբ այլ այրուձի եկավ (պարսից) արքունիքից: Բացի այս երկուսից, երեք հարյուր էլ կրոնուսույցներ են բերել իրենց հետ ու պառակտում են երկիրը: Ոմանց իրենց կողմն են քաշել և կամենում են եկեղեցին ձեռք գցել: Արքայի հրամանով բոլորի վրա ճնշում են գործադրում՝ ասելով, եթե կամավոր կերպով ընդունենք մեր կրոնը, պարգևների ու պատիվների կարժանանաք արքայի կողմից, և պետական հարկը ձեզ կզիջվի: Իսկ եթե կամավոր կերպով չանեք այդ բանը, հրաման ունենք գյուղերում, կալվածքներում ատրուշաններ շինելու, վռամական կրակը ներս դնելու և մոգեր ու մոգպետներ նշանակելու իբրև այս երկրի օրենսդիրներ: Իսկ եթե մեկնումեկը չենթարկվի, մահվան կդատապարտվի, և այդպիսինի կինն ու որդիները կտարագրվեն երկրից»:*

*Հայոց զորքերն այս բանն իմանալով չհուսալքվեցին, այլ ընդհակառակն, այդ գույժի պատճառով ավելի համախմբվեցին և նրանց քաջալերելով ուղարկեցին Աղվանք, որպեսզի միաժամանակ խաբելով գրավեն նրանց (պարսիկներին), որ եկեղեցու միաբանությունն իրենց ձեռքը չգցեն, մինչև որ մի ելք կգտնեն: Այդ ժամանակ հայոց զորքը նամակ գրեց Թեոդոս կայսրին, որ այս մեծ վտանգի մեջ օգնի նրանց: Թեոդոսն այդ ժամանակ իսկույն մեռնում է, իսկ անօրեն Մարկիանոսը թագավորելով դրժում է դաշինքը և իր ցանկությամբ համակամ է դառնում հեթանոսների հետ: Հայ քաջերը, ոչ մի տեղից օգնություն չգտնելով, ապավինում են Բարձրյալի վերին ամենակալ զորությանը, հայոց զորքը բաժանում են երեք մասի. առաջին մասը հանձնում են Ներշապուհ Ռմբոսյանին, որ պահպանի Ատրպատականը, երկրորդ մասը տալիս են հայոց Վարդան զորավարի ձեռքը, որպեսզի Վրաստանով անցնի, գնա Ծորա մարզպանի վրա, որը եկել, ավերել էր Աղվանքի եկեղեցիները:*

*Իսկ երանելի Վարդանը չգիտեր անիծված ուրացող Վասակի դաբանագործության մասին. Վասակը հայոց զորքի՝ Աղվանք գալուց առաջ պարսից մարզպան Մերսեբուխտին հայտնում է, որ հայոց զորքը բաժանել են մասերի և Վարդանին քիչ զորքով ուղարկել են այդ կողմը: «Արդ՝ պատրաստ եղիր դուրս գալու դրանց դեմ, որպեսզի խպառ ոչնչացնես»: Այս էր այդ անօրենի խորհուրդը: Մերսեբուխտը, հաշվի առնելով Վասակի քաջալերանքները, չի մնում Ծորա կողմերը, այլ հավաքում է իր զորքի ամբողջ բազմությունը, արագությամբ գալիս, անցնում է Կուր մեծ գետը և հանդիպում է Վարդանին Վրաստանի սահմանների վրա՝ Խաղխաղ քաղաքի դիմաց, որն Աղվանքի թագավորների ձմեռանոցն էր[1]: Բանակելով ամբողջ*

*դաշտի մեծությունը ներփակում է. զինավառված Հայոց զորամասի դեմ ճակատամարտի է պատրաստվում: Իսկ քաջ Վարդանը և իր զորամասը, երբ տեսան հեթանոսների բազմությունը ու նայեցին իրենց սակավությանը, և չնայած որ խիստ քիչ էին նրանց համեմատությամբ, այնուամենայնիվ չվախեցան նրանց խիստ շատ լինելուց, այլ բոլորը միաբանված իրենց ձայնը երկինք բարձրացրին և ասացին. «Տե՛ր, դատի՛ր դու նրանց, որոնք մեզ են դատում, մարտնչի՛ր նրանց դեմ, որոնք մեր դեմ են մարտնչում. քո զենքով ու ասպարով օգնի՛ր մեզ, սասանի՛ր ու դողացրո՛ւ անօրենների զորքը»[2]:*

*Այսպես աղոթելով ու խմբավորվելով՝ Հայոց քաջերը հարձակվում ու աջ թեր ջարդելով չպրտում են ձախ կողմը և բոլորին սրի քաշելով փռում են դաշտի երեսը: Մի մասին էլ փախուստի մատնում, գցում են անտառային ապահով վայրեր՝ Լուբնաս[3] գետի հեռավոր դարուփոս գետեզերքների մոտ, որտեղ ետ են դառնում բաղասական թագավորազներից ոմանք. այդտեղ ձիուց ցած են գցում Դիմաքսյանների գնդից Հայոց նախարարներից մեկին, սպանում են Մուշին և վիրավորում Գազրիկին: Այդ նույն տեղում դիտում էր Արշարունի Արշավիրը, արյունծարար գոռում ու հարձակվում է վարազանման, նա սպանում է Լփինքի[4] թագավորի եղբայր քաջ Վուրկին և ուրիշ շատերի, որոնց հենց այստեղ է սպանում: Եվ այսպես ամեն մարդ իր դիմաց եկած թշնամուն ոչնչացնում է. իսկ չափազանց հանդուգն հարձակման պատճառով գետասույզ եղածներն ավելի շատ էին, քան ցամաքում սրով ընկածները: Շատ սպանվածներից գետի վճիտ ջուրն արյունի է փոխվում: Նրանցից ոչ ոք չի ազատվում, միայն անտառախիտ թավուտներում թշնամու զորականներից մեկը զենքով բարձրանում է ձիու վրա և մազապուրծ եղած գույժ է տանում գլխավոր բանակը, որ փախչում, ապաստանում է մեծ մայրաքաղաքում:*

*Հայոց զորքը, պատերազմական այդ մեծ գործը կատարելով, հավաքում է մեծ քանակությամբ ավար, կուտակում շատ ոսկի ու արծաթ, արի ու քաջ այրուձիի զենքն ու զարդը: Նաև քաջաբար հարձակվում են այն բերդերի ու քաղաքների վրա, որոնք Աղվանքում պարսիկները գրավել էին: Ջորեղ մարտնչում էին, այրում նրանց ապաստարանների ամրությունները և խումբ-խումբ գայթակղող մոգերին ուր էլ գտնում, սրի էին քաշում և նրանց դիակները երկնքի թռչուններին ու երկրի գազաններին էին նետում: Մաքրեցին տեղերը պիղծ կերպով կատարված բոլոր զոհերից և եկեղեցիներն ազատեցին անասելի փորձությունից:*

*Աղվանքի իշխաններից ու շինականներից բազմաթիվ մարդիկ,*

*որոնք Աստծու անվան համար ցրվել ու տարածվել էին Կապկոհ[5] լեռների թաքստարաններում, երբ տեսան հայոց զորքի մեծ հաղթությունը, եկան-հավաքվեցին, նրանք էլ էին միանում հայոց զորքի հետ և մասնակից դառնում նրանց հերոսությանը: Այնուհետև շարժվում, գնում են հոների լեռնանցքի վրա, որը պարսիկները բռնի ուժով գրավել էին: Գրավում ու քանդում են լեռնանցքի ամրությունները, կոտորում են ներսում գտնվող զորքերը և ելքը հանձնում են Աղվանքի թագավորների ցեղից Վահան անունով մեկին: Այս ամբողջ քաջագործությունների ընթացքում նրանցից ոչ ոք չընկավ, բացի միայն (Մուշից), որ նահատակվեց:*

*Եվ անմիջապես նույն մարդուն, որին հանձնեցին լեռնանցքը, իբրև բանագնացի ուղարկեցին հոների երկիրը, որպեսզի բանակցի նրանց հետ, դաշինք կնքի և անխզելի միաբանություն հաստատի: Իսկ երբ նրանք լսեցին, իսկույն ժամանեցին այնտեղ և ականատես եղան հաջողությանը: Ըստ իրենց կրոնի՝ երդումով դաշինք կապեցին, ընդունեցին նաև քրիստոնեական երդումը և պարտավորվեցին նրանց հետ հաստատուն միաբանություն պահպանել: Այս ամենն արեցին իրենց կամքով: Մինչդեռ այդ տեղում էին, գուժկան եկավ Հայաստանից՝ ուրացող Վասակի վերաբերյալ ասելով, թե ավերեց Հայաստանի շատ գավառներ: Վարդանը մեծ ավարով շարժվեց և ուրախությամբ, Աստծուց գոհ, նրա հույսին ապավինած՝ երեսուն օրվա ընթացքում հասավ Հայաստան: Վասակը իմանում է քաջ Վարդանի հաղթական վերադարձի, հոների ու աղվանների դաշինքի մասին, փախչում է Վարդանի երեսից իր չար էության և չարագործությունների պատճառով. Աստծուց նույնպես ողորմածություն չի գտնում:*

*Հայաստանի ու Աղվանքի միջև Վերինի օգնականությամբ այս [դաշինքը] տեղի ունեցավ Հազկերտ թագավորի ժամանակ[6]:*

*1. Խաղխաղը (արդի Ղազախ) Արշակունիների ժամանակ եղել է հայոց թագավորների ձմեռանոցը և միայն արքայատան անկումից հետո է, որ այն դարձել է Աղվանից թագավորների սեփականությունը:*

*2. **Սաղմ., ԼԴ, 1:***

*3. Լուբնաս գետի նույնացումն Աղստևի հետ մերժելի է, քանզի այն տեղադրվում է Լփինքում:*

*4. Երկրամաս Ալազան գետի ձախ ափին՝ Կախեթում:*

*5. Խոսքը Կովկասյան գլխավոր լեռնաշղթայի մասին է:*

*6. Հավանաբար 450 թ. աշնանը:*

## ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻՆ 450-451 ԹԹ. ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Թովմա Արծրունին IX–X դարերի պատմիչ է, վարդապետ: Հեղինակ է մեծարժեք «Պատմություն տանն Արծրունյաց» երկասիրության: Այստեղ շարադրված է Արծրունյաց նախարարական տոհմի պատմությունը՝ վաղնջական ժամանակներից մինչև X դարի սկիզբը: Պատմությունը բաժանվում է երեք դպրությունների, սակայն Գ դպրությունը մնացել է անավարտ, թերի: Հետագայում որպես շարունակություն դրան կցվել է Անանուն Արծրունի պատմիչի աշխատությունը՝ իբրև Թովմա Արծրունու երկասիրության Դ-րդ դպրություն:***

***«Պատմությունն տանն Արծրունյաց» երկասիրությունը պատմական բացառիկ ու արժանահավատ սկզբնաղբյուր է: Այստեղ պահպանված շատ վկայություններ նորովի են լույս սփռում նախորդ դարերի պատմական իրադարձությունների վրա, քանզի Թովման օգտագործել է մեզ չհասած այնպիսի սկզբնաղբյուրներ, որոնք այլ մեկնաբանություն են հաղորդում դեպքերին:***

***Թովմա Արծրունու Պատմությունից ստորև բերված հատվածները տրվում են ըստ Վ. Մ. Վարդանյանի աշխարհաբար թարգմանության, որը լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարով (Երևան, 1978):***

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՐԾՐՈՒՆՅԱՑ ՏԱՆ

#### *Դպրություն Բ*

*Գլ. Ա. Հայոց նախարարները խաղաղեցրին երկիրը: Իսկ Մեծն Տրդատի թագավորաբնակ տեղը[1] տվեցին Վահան Արծրունուն, որպեսզի նա այնտեղ կառուցի թագավորական ապարանք: Այն կառուցվեց: Ապա մտադրվեցին նրան թագավորեցնել Հայաստանում[2], քանզի սրտոտ և ուժեղ, խելացի, խոնարհ, առատաձեռն և ուրախ տղամարդ էր: Բայց հետո հայոց նախարարներն անմիաբան գտնվեցին և հրաժարվեցին Վահանին թագավորեցնելու մտքից ու մեկնեցին Մեծն Վարդանի մոտ: Վահանը ևս հենց սկզբից նախարարների հետ մեկնեց Վարդանի մոտ և նրան հանձնեց Հայոց վերակացությունը: Նրանք միշտ հնազանդ եղան Վարդանին:*

*Իսկ պարսիկների թագավորը մեկնել էր ծորա դուռ՝ քուշանների դեմ պատերազմելու, ուստի Հայոց երկիրն ապահով էր մնում պար-*

*սից հրոսակներից: Այնտեղ քուշաններից սպանվեց [պարսից] Թագավորը, նրա փոխարեն գահակալեց Հազկերտը, որը գոռոզաբար սկսեց ոգորել հայոց իշխանների դեմ:*

*... Երբ Արտազ գավառի Ավարայր դաշտում եղավ Սուրբ Վարդանի մեծ պատերազմը Մշկանի և պարսկական զորքի դեմ, այնտեղ Աստծուց խրախուսված հայոց սրբազան զորքը նահատակվեց հանուն Քրիստոսի: Այդ ժամանակ Վահան Արծրունին երևելի քաջությամբ պատերազմում էր Սուրբ Վարդանի կողքին և հանդարտ ճեմում պարսից քաջ ախոյանների մեջ, ինչպես հուրը եղեգներում:*

*Երբ երկու կողմերի միջև սկսվեց ճակատամարտը, և հայոց զորքի ձախ Թևը սկսեց պարտվել, Սուրբ Վարդանը մտրակեց ձին, ախոյան պարսիկներին փախուստի մատնեց և ուժեղացրեց իր ձեռքի տակ եղած զորագունդը: Նույն ժամանակ Վահան Արծրունին մտնելով պարսից զորքի մեջ, ետ դարձավ Վարդանի առջևից: Մինչ այս, մինչ այն, 140 ուժեղ մարդկանցից բաղկացած պարսկական մի զորագունդ սրընԹաց բախվեց նրանց: Աչքերը վեր բարձրացրեց Սուրբ Վարդանը և տեսավ անօրեն Վասակին՝ Սյունյաց տիրոջը, որի մարդիկ փուԹապես Վարդանին գցեցին փղերի լավ զինված գնդի մեջ: Քաջ Վահան Արծրունին զինակցեց նրան: Եվ քաջ ու ընտիր նահատակներ Վարդանն ու Վահանը զոհվեցին միասին: Հանուն Քրիստոսի՝ մարտիրոսի անուն ժառանգեց հայոց սուրբ զորագունդը, բաղկացած 696 հոգուց[3]: Այս մասին պատմվում է Աբրահամ Խոստովանողի համառոտ [պատմուԹյան] մեջ[4]:*

*1. Հավանաբար արքունի ոստան Վաղարշապատը:*

*2. Ակնարկը հստակորեն մատնանշում է, որ հենց սկզբից էր ծրագրված հայկական Թագավորության վերականգնման գաղափարը, իսկ Վահան Արծրունին էլ եղել է հայոց գահի հավակնորդ:*

*3. Թովմա Արծրունու սույն վկայուԹյուններն ակնհայտորեն ցուցում են Վարդանանց պատերազմի վերաբերյալ գոյուԹյուն ունեցած և մեզ չհասած այլևայլ աղբյուրների իրողուԹյան փաստը:*

*4. Աբրահամ Խոստովանողը V դարի հայ նշանավոր մատենագիրներից է: Գործուն մասնակցուԹյուն է ունեցել Վարդանանց շարժմանը, այնուհետև աքսորվել է: Հայաստան վերադառնալուց հետո Գյուտ կաԹողիկոսի կողմից նշանակվել է Բզնունիքի եպիսկոպոս: Ասորերենից հայերեն է Թարգմանել Մարութա Նփրկերտցու «Վկայք Արևելից» երկասիրուԹյունը: ԵԹե հիմք ընդունենք Թովմա Արծրունու այս խիստ արժեքավոր ցուցումը, ապա աներկբայելի է դառնում Վարդանանց պատերազմի վերաբերյալ այլ աղբյուրների գոյուԹյան հարցը:*

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՆ ՎԱՀԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Դրվագ Գ*

***Գլ. ԾԹ.*** *Հազկերտ Թագավորի տասնյոթներորդ տարում[1] Վիրքի Աշուշա իշխանն արքունի դրանն ավագներին աղաչեց՝ բազում ու անհամար նվերներ տալով յուրաքանչյուրին, մանավանդ բոլորից շատ՝ անօրեն Հազարապետ ՄիհրներսեՀին, որպեսզի մեծ ջանքերով ու սաստիկ աշխատությամբ կարողանա համաձայնեցնել միջնորդելու Հազկերտ Թագավորի առաջ, որ նա իրենց պարգևի Մամիկոնյան տոհմի երանելի նահատակ Հմայակի որդիներին, որոնց, որպես մահապարտների, Սյունյաց նենգավոր իշխան Վասակը խլել էր դայակներից, տարել արքունիք, որպեսզի այնտեղ սպանվեն, երբ դեռ շատ էին փոքր: Մարդասեր Աստվածը, նրանց հայրերի սուրբ արյան բարեխոսությամբ, փափկացրեց Թագավորի սիրտը՝ և սա կատարեց բոլորին անհավատալիորեն մեծ Թվացող խնդիրքը՝ [Հմայակի որդիներին], պարգևեց Աշուշային՝ իբրև շատ սիրելի ու վաստակավոր մարդու:*

***Գլ. ԿԲ.*** *Հմայակի այդ որդիներին վրաց Աշուշա բդեշխը խնդրել էր պարսից արքա Հազկերտից և բերել-հանձնել էր իրենց մորը, որի անունն էր Զվիկ, քանզի Զվիկի քույրն էլ, որի անունն էր Անուշվռամ, կնությյան էր տրված վրաց Աշուշա բդեշխին: Եվ այնտեղ այդ մանուկները դաստիարակվելով ու կրթվելով, առաջադեմ եղան ամեն ինչի մեջ: Նրանցից առաջինի անունը ՎաՀան էր, երկրորդինը՝ Վասակ, երրորդինը՝ Արտաշես: Բայց նրանք ունեին նաև մի այլ, կրտսեր եղբայր, անունը՝ Վարդ, որ մանուկ էր դեռ և Տայքում իր դայակների մոտ էր գտնվում:*

***Գլ. ԿԳ.*** *Բարեմասնություններով առատորեն ու առավելապես օժտված էր Սուրբ Հմայակի ավագ որդին, որի անունն էր ՎաՀան: Քանզի խելոք մարդ էր, ողջախոհ ու բարեսեր, ինչ գործի որ ձեռնարկում էր, Աստված հաջողություն էր տալիս նրա ձեռքին և զորացնում: Պարսիկ գործակալները, որ գալիս էին արքունիքից, Թեպետ և ակամա, այսինքն՝ Աստծո հրահրումի շնորհիվ, սիրում և պատվում էին նրան: Նրանք պարսից Թագավորի առաջ էլ էին գովում այդ մարդու քաջությունը և երբեք չէին մոռանում, մինչև որ ինքն իսկ Պերոզ Թագավորը[2] ճանաչեց նրան գլխովին և քաջերի շարքն էր դասում, ամենքի առաջ գովում էր և պատվո արժանի համարում: Սակայն որքան էլ մտածում էր նրա իմաստության ու քաջության համապա-*

*տասխան պարգևներ տալ, մեկ էլ հիշում էր նրա հայրերի ու նախահայրերի գործերը, թե ինչպես նրանք անընդմեջ ընդդիմությամբ ու պատերազմով նեղում էին իրենց, և պարգևատրությունը հետաձգում էր ու ծածկում էր նրան արժանի պատիվ տալու որոշումը, մանավանդ, երբ հաճախ էլ լսում էր այն նախանձորդների բանսարկությունը, որոնք տագնապի ժամանակ հայոց նախարարներ էին կոչվել, և որոնց առավել ևս վախեցնում էր Մամիկոնյան Վահանի առաջադիմության աճը: Արքայից արքան կասկածում էր երկյուղելով, թե դրանով հետագայում կարող էր այն անարժան գոռոզացածների սրտերը կոտրել:*

*Իսկ այն ժամանակ թեպետ կային էլ բացառիկ քաջ ու արժանավոր մարդիկ, ինչպես քաջ տղամարդ Բաբիկ Սյունին կամ սքանչելի Առնակ Ամատունին և կամ նրանց նման, որևէ մեկը, սակայն նրանք էլ, մոլեկան թագավորի հոգեսպանությունից և ժամանակի իշխանների ամբարիշտ կատաղությունից տագնապած, գիշակեր արծիվներին սլացքում տեսած նապաստակների պես, ժայռերի ծերպերին կամ անտառների մացառուտ տեղերում ծպտված թաքնվել էին. կարևոր էին համարում համբերատարությամբ քրիստոնեության հավատի մեջ մնալ, քան թե փառասիրությամբ երերալով ուրացության մեջ կործանվել:*

***Գլ. ԿԵ.*** *[Պարսից] արքունիքից եկավ մաղխազ Գադիշոն, և ուրացողների դասը հավաքվեց նրա մոտ: Թեպետև նրանք համակված էին այս աշխարհի ժամանակավոր ու թախծալից ուրախությամբ, սակայն երբ տեսնում էին Վահան Մամիկոնյանին այսպես երևելի ու մեծ պատիվների հաճույքը վայելելիս, թառամելով խամրում էին և ճկվելով թոշնում: Նրա շուրջ հնարներ ու պատճառներ էին որոնում, որպեսզի նրան ու եղբայրներին կարողանան կորստյան մատնել: Արքունիքի մեծամեծներին, ինչպես նաև թագավորին փորձում էին համոզել, թե անհնար է, որ սա Հայաստանում ապրի առանց ապստամբության: Արիներին մեկ առ մեկ հիշեցնում էին նաև նրա նախնիների գործերը, ասում էին՝ նրանցից ո՞րը չխռովեցրեց Արյաց աշխարհը և չպատճառեց մեծամեծ վնասներ ու մահեր: Արդ, և սա, ասում էին, երբևէ նույն խռովությունները կհրահրի ձեր դեմ: Եվ նրանք էլ, հաճախակի լսելով բանսարկուների քսության այս բոլոր խոսքերը, կասկածում էին Վահան Մամիկոնյանի համբավի վրա և նայելով հաջողակ ու խելոք այդ տղամարդուն՝ տրտմում, որ սիրել են նրան:*

*Իսկ Վահանը, իմանալով նախանձավորների այս բամբասանքների մասին և հասկանալով, որ նրանք երբեք չեն դադարեցնելու իրենց չարանախանձ խոսքերը, և չկարողանալով դիմանալ հանապազօրյա*

*բանսարկություններին, վեր կացավ, գնաց արքունիք, տկարացավ հավատի մեջ և վերադարձավ Հայաստան: Սակայն և այնպես չկարողացավ փակել չարախոսների բերանը: Որովհետև ով հրապարակավ իշխանի առաջ ոչինչ չէր կարողանում խոսել, նրան էր ատում. ով որ որսը կամ թիրախը դիպուկ նետահարել չէր կարողանում, նրան էր մեղադրում: Ասում էին. «Նստում է, բոլորի վրա ծիծաղում քթի տակ»: Եվ ով որ անմտությունից չէր կարողանում արքունի գործը գլուխ բերել, նրան էր պատճառ բռնում: «Նա է,– ասում էին,– ամեն ինչի մեջ առաջ ընկնում և ոչ ոքի թույլ չի տալիս գործել կամ օգուտ տալ»: Նա Վրիվ անունով մի գործակից ուներ, ազգով անանուն, գործի մեջ անփորձ: Ասորի մարդու տղա էր, բայց չատախոսությամբ և վայրահաչություններով ավելի քան նման էր ասորու: Սա, չկարողանալով արքունի գործը կատարել, գնաց, թագավոր Պերոզի առաջ ամբաստանեց Վահանին, ասելով. «Ինձ չի թողնում մոտենամ ոսկի կտրողի գործին[3], և ինքն իր աշխարհի ամբողջ ոսկին ժողովելով, որոշել է գնալ կայսրի մոտ կամ Հոնաց աշխարհը և ոսկին տալով՝ զորք խնդրել ապստամբության համար»:*

*Իր մասին ամբաստանության այս բոլոր խոսքերը լսելով, իմաստուն Վահանը չտապով առավ ամբողջ ոսկին, հասավ արքունիք: Եվ թագավորն էլ իմանալով Վահանի ճեպընթաց ժամանելու մասին, զարմացած ասաց. «Վահանի այդպիսի արագ ժամանելը չատ հակառակ է Վրիվի խոսքերին, մանավանդ, եթե բան էլ է բերել»: Եվ ներկայանալով թագավորին, Վահանը խոսեց, թագավոր Պերոզն էլ տեղեկանալու համար հարցրեց, թե արդարև ի՞նչ է բերել ու Վահանից իմանալով բերած ոսկու ահռելի քանակը, հույժ ուրախացավ: Ապա Վրիվից պահանջեց իր խոսքերը բարբառել Վահանի հանդիման: Վրիվը կրկնեց առաջվա ասածները: Վահանն էլ լսելով Վրիվի բոլոր ասածները, թագավորի առաջ պատասխան տվեց, ասաց. «Ես էլ գիտեմ իմ միամտությունը, որը ձեզ ցույց տվեց Վրիվը: Սակայն ես այնքան կույր չեմ, որ նույնիսկ չկարողանամ տեսնել Արյաց ուժը, որը բազում ապստամբ ազգերի է պատժել, գցել սաստիկ երկյուղի մեջ և հնազանդեցրած պահում է իր տիրապետության տակ: Իսկ ես, որ, դրա ասելով, կամենում եմ ապստամբել, նույնիսկ ինքը գիտե, թե ինչպես մի ծառա էլ չունեմ, որ ինձ խոնարհություն անի, և ոչ էլ երկու կամ երեք պատանիների վրա եմ տիրաբար իշխում, որպեսզի երկյուղածությամբ ինձ սպասարկեն: Այդ է իմ զորքի ուժը: Բայց եթե ես նեղացած լինեի ձեզանից և կամենայի գնալ ու կորչել որևէ օտար երկրում, ինչի՞ պիտի այստեղ բերեի այդքան ոսկին, որ մինչև իմ*

*մահը, որքան էլ երկար ապրեի, իմ անձին, այլև ինձ հետ տասը հոգու լի ու լի բավական կլիներ: Դուք ուրիշ որևէ մարդու ոստիկան չէիք կարգել ինձ վրա, որ ինձ հարկադրեր այստեղ բերել այդ ահագին ոսկին: Բայց թե ես առհասարակ ինչպես եմ ձեզ ծառայում, այդ ինք-նե՛րդ գիտեք և դո՛ւք կարող եք, թե կամենաք՝ ինձ ապրեցնել, ինչպես նաև անմիջապես մեծարել՝ դարձյալ ինչպես որ կամենաք»:*

*Թագավոր Պերոզն ու մնացած մեծամեծները լսելով Վահանի այս իմաստուն խոսքերը, բոլորը միասին իրավացի համարեցին նրա՛ ասածները և ո՛չ թե Վրիվինը: Եվ Վահանն ատյանից դուրս եկավ ար-դարացված: Իսկ ասորու որդի Վրիվը ելավ ամոթահար ու արհա-մարհված: Եվ հրաժեշտ տալով արքունիքին, Վահանը մեծարանքնե-րով ու մեծ շքեղությամբ եկավ հասավ Հայոց աշխարհը:*

*Բայց որովհետև ոչ մի օր նրա մտքերը խաղաղ չէին ուրացության վատ անվան համար, որ, իր նահատակված հայրերի պես[4], իր վրա կրում էր առերևույթ և ոչ ճշմարտությամբ, առավել ևս, արքունիքից պարզերես գալուց հետո, կասկածում էր իր անձի վրա, մտածելով, թե միգուցե աշխարհիս փառքերով խաբված, չարունակի ու մոռանա հանդերձյալ աշխարհի երկյուղը և վնասվի: Եվ այսպես անվերջ մաշ-վելով մտքերի մեջ, իրեն ջերմորեն սիրողներին խնդրեց հոգալ իր մա-սին, հնարներ էր փնտրում և Փրկիչ Քրիստոսից անդադար խնդրում էր շնորհել իրեն մի բարի ժամ և մտքում ասում էր. «Միշտ քեզ հետ, տե՛ր Աստված, ամեն ինչ հնարավոր է, և քեզ հետ ոչ ոք ու ոչինչ չի տկարանում: Դու, տե՛ր, ապավեն եղիր ինձ, խոստովանության դար-ձի ժամանակ շնորհիր և սովորեցրու ինձ քո կամքն ունենալ, որով-հետև դու ես իմ Աստվածը»:*

***Գլ. ԿԶ.** Եվ մինչդեռ Վահանն այսպիսի հուզումնալից տարակու-սանքի մեջ էր, Վրաց աշխարհում հանկարծակի խռովալից հուզում-ներ եղան: Վախթանգ [թագավորը][5] անօրեն բդեշխ Վազգենին սպանեց Պերոզ արքայի քսանհինգերորդ տարում: Այդ լսեցին Հայոց աշխարհի մարդիկ, որոնցից շատերն այն տարի Աղվանքում էին գտնվում, կռվում էին պստամբ բերդաբնակների հետ, և բոլոր նրանց զորագլուխն էր Զարմիհր Հազարավուխտը: Եվ Հայոց աշ-խարհում էլ Ատրվշնասպ Յոզմանդյանն էր մարզպան: Իսկ քրիս-տոնյա հայ մարդիկ, որ այն տարի այնտեղ կռվի մեջ էին, ավելի շատ վիրավորվում ու մաշվում էին ուրացությամբ այն ժամանակ անբա-րեհաճ դարձած հայոց ետին իշխանների արհամարհանքներից ու նա-խանձությունից, քան թե պարսիկ զորագլուխների բռնի գործողու-թյուններից: Եվ նրանք այն ժամանակ, երբ իմացան վրաց արքայի*

*ապստամբության մասին, ուրախալից սրտով երջանկացան: Որովհետև նրանց լուր էր հասել, թե վրաց արքան ասում է. «Ես ոչ ոքի թույլ չեմ տա, որ կռիվ տեսնի, այլ այնքան հոնաց զորքեր կհանեմ, որ պարսից զորքերը չկարողանան դիմադրել»: Այս լուրով զորացած քրիստոսասերներն ակնկալում էին իրենց անձերի օգուտը և Բարձրյալի բարի այցելությանն էին սպասում: Սակայն վախենում էին, թե միգուցե պարսից զորագլուխները հայոց զորքերը հավաքեն և արքունիք տանեն:*

*Բայց Քրիստոսը նրանց այդպիսի տարակարծություններից ազատեց, և նրանք եկան Հայաստան: Հասնելով Շիրակ գավառի այն դաշտը, ուր բանակել էր Հայաստանի մարզպան Ատրվշնասպ Յոզմանդյանը, և նրա մոտ Հայաստանի հազարապետ Վեհվեհնամն էր գտնվում,— այստեղ հայոց նախարարներից մի քանիսն իրենց մեջ խորհուրդ արին: Նրանք գիտեին, որ վաղուց ի վեր Վահան Մամիկոնյանը տրտմության ու տարակուսանքների մեջ է կեղծ մոգության պատճառով, և ասացին. «Մեր և նրա փրկության համար շատ պատեհ է այս ժամը: Նա կապրի իր խղճմտանքով, և մենք էլ կազատվենք անվերջանալի կասկածանքներից ու հարաժամ տանջանքներից, որոնց ծառայում ենք հոգեմաշ վրեժխնդրությամբ: Վրաց այդ արքան քաջ է: Ո՞վ գիտե, գուցե բազումողորմ Աստվածը մեզ տեսնի վտանգի մեջ և օգնության հասնի: Եվ մենք էլ, վրաց հետ միասին, թերևս կարողանանք մի քիչ նեղը գցել պարսիկներին»: Այսպես խորհեցին հայ նախարարներից մի քանիսը, որ քիչ էին, և նրանց խորհուրդը լսելի եղավ նաև ուրիշներին: Եվ որպես թե Աստծո առաջնորդությամբ բոլորը, որ լսել էին այս խորհուրդը, միաբանեցին կամքով ու հոժարությամբ:*

*Այնուհետև համարձակները մի գիշերում իրենց մտածածը հայտնեցին Վահան Մամիկոնյանին, որը լսելուց հետո ամենքին ասաց. «Այդ խորհուրդի մեջ գտնվողներիցդ ոչ բոլորը, բայց ոմանք գիտեք, թե ինչպես եմ ամեն ժամ տագնապած տանջվում այս սուտ անվանս համար, որ ատելությամբ եմ կրում անձիս վրա: Քանզի երբ մոտենում է երեկոն, կասկածում եմ մինչև առավոտ և առավոտին հասնելով՝ վախենում եմ ցերեկից՝ նայելով վաղանցուկ այս աշխարհի անորոշ վախճանին, որ արագընթաց է ու հանկարծահաս: Մտածում եմ, թե գուցե այսպիսի անվամբ էլ գնամ աշխարհից: Ապա և մտածում էի,— և դա ընտրելագույնն էր ինձ համար,— թե լա՞վ չէր՝ մայրս ինձ բնավ էլ աշխարհ բերած չլիներ: Եվ անդադար աղաչում եմ Աստծուն՝ մի հնար գտնել ազատելու ինձ այս մտատանջությունից, որ հալածում է*

*ինձ: Բայց միաբանել այն խորհուրդին, որ դուք եք մտածել և ձեզ ասել, թե լավ է ձեր խորհուրդը, իրականացրեք այն, ես չեմ կարող ասել և չեմ համարձակվում, որովհետև քաջ գիտեմ Արյաց ուժն ու հանդգնությունը և հոռոմների թուլությունն ու խաբեությունը: Ես փորձով ձեզ ծանոթացրել եմ, թե ինչպես մեր հայրերի հետ ուխտ կապեցին երդմամբ և ստեցին: Իսկ վրաց արքայի ու հոնաց զորքերի մասին որ ասում եք, Վիրքն առանձին վերցրած թույլ երկիր է՝ սակավամարդ այրուձիով: Բայց հոները, ո՞վ իմանա, կհամաձայնե՞ն գալ թե՞ ոչ. նրանք մեջտեղ չկան ու չեն էլ երևում: Սակայն ամենից ավելի ձեզնի՛ց վախեցեք, որովհետև սուտ մարդիկ եք և անվստահելի: Բայց եթե ինձ հարցնեք և իմ խոսքը հավանեք ու կատարեք, ձեզնից հեռու կվանեք այդ մտքերը և կաղաչեք միայն Աստծուն, որ այս վիճակի հնարը գտնի: Նա է դյուրին կատարում՝ ինչ որ կամենա: Իսկ ձեր դատարկ ու անպիտան խորհուրդներով ինձ նեղություն մի՛ տվեք»:*

*Եվ Մամիկոնյան Վահանից այս բոլոր խոսքերը լսելով՝ հայոց նախարարները միաբանությամբ պատասխան տվին, ասացին, թե «Այդ ամենը, որ ասացիր, ինչպես որ վայել է քո իմաստությանը, ասացիր ճշմարիտ ու արդար: Բայց մենք մեր հույսը ո՛չ հոռոմների վրա ենք դրել, ո՛չ հոների, այլ նախ Աստծո ողորմության վրա, որ պիտի լինի Սուրբ Գրիգորի բարեխոսությամբ, այն նախնիների մահվան վրա, որ իրենց նահատակությամբ հաճո եղան Փրկիչ Քրիստոսին, և ապա մեր սեփական մահվան վրա, քանզի լավ ենք համարում մի ժամում մեռնել, քան թե ամեն օր եկեղեցու և քրիստոնեության ծաղրվելն ու ավերվելը տեսնել»:*

*Մահվան անունը լսելուն պես Վահան Մամիկոնյանն ու նրա խիզախ եղբայր Վասակը քաջալերվեցին, զորացան և, Սուրբ Հոգու շնորհներով լցված, համաձայնեցին: Սկսեց խոսել Վահան Մամիկոնյանը և ասաց. «Դուք գիտեք, որ իմ եղբայր Վարդն արքունիքում է, և համոզված եմ, որ պարսիկները հենց որ լսեն մեր խորհուրդը, կկալանավորեն նրան ու կտանջահարեն: Բայց ես համաձայն եմ մահվան, քան թե այսպես ուրացությամբ ապրելուն: Համաձայն եմ ձեր այդ խոսքին, ինչպես ուզում եք՝ արեք: Եվ Ամենագետը, տեսնելով իմ դարձը և իմանալով, որ արդարև ամբողջ սրտով ու կամքով է դարձս, ինձ բարություն կանի և ողջ ու առողջ ինձ մոտ կվերադարձնի կարոտալի եղբորն իմ՝ Վարդին, որպեսզի իմ աչքով տեսնեմ և ուրախանամ, ապա ինձ վրա կկատարի իր կամեցածը, ինչ իր աչքին հաճելի կթվա»:*

*Եվ այս խոսքից հետո բոլորը՝ քրիստոնյաները և ուրացածները, միաբանությամբ վեր կացան ու աղոթելով խնդրեցին Սուրբ Ավետարանը: Եվ առաջ մատուցելով Աթիկ անունով սուրբ քահանային,– որ երևելի Բջնի գյուղից էր, խելոք մտքով ու խորհրդապահ սրտով և նրանց հետ գտնվում էր բանակում,– ողջունեցին բոլորին, ապա յուրաքանչյուրն իր ձեռքը դրեց Ավետարանի վրա, և միահամուռ ասացին. «Ով որ ընդունի այս հավատը, որ ամենքի Փրկիչ ու Տեր Հիսուս Քրիստոսը քարոզելով գրեց այս Գրքում, թող Մարդու Որդին էլ խոստովանելով նրան տանի իր Հոր առաջ՝ նրան երկնքի բարությունների ժառանգորդը դարձնելու համար: Եվ ով որ մոլորվելով ուրանա այս հավատն ու նենգելով դավաճանի Ավետարանի երդմանը, Մարդու Որդին էլ ուրանալով թող նրան հանի արտաքին խավարը, ուր միայն աչքերի լացն է ու ատամների կրճտոցը»:*

*Եվ այսպես գիշերը երդվելով ու հաստատվելով Քրիստոսի հավատի մեջ, հրաժեշտ տվին միմյանց, և յուրաքանչյուրն իր կացարանը գնաց քնելու:*

***Գլ. ԿԷ.*** *Տեղնուտեղը հայոց նախարարներից մեկը, որի անունն էր **Վարազ-Շապուհ**, Ամատունյաց տոհմից, ելնելով միաբանության խորհուրդից, ինչպես Հուդան էր բաժանվել սուրբ առաքյալների խմբից, նույն գիշերը գնաց մարզպանին ու բոլոր մյուսներին պատմեց միաբանության խորհուրդը. և՛ երդումն Ավետարանի վրա, և՛ հայոց բոլոր նախարարների խոսքերը: Եվ երբ լսեցին մարզպան Ատրվշնասպը, այլ պարսիկ մարդիկ ու հայ ուրացածների ջոկը, սրտակոտոր զարհուրեցին և գիշերվա մնացած մասը երկյուղից անքուն անցկացրին: Առավոտյան ժամին հասնելով՝ նրանք հեռացան այնտեղից և գնացին բանակ դրին Անի[6] կոչված բերդի պարսպի մոտ: Աղետի վերաբերյալ խաբեության խրատ տվողներն ու մարզպանը կասկածամտությամբ ամբողջ օրն այնտեղ անցկացրին: Ապա ուրիշներին ստույգ տեղեկացնելով, թե վաղը ևս [հայերը] այնտեղ են լինելու, նույն գիշերում մարզպանը, հազարապետն ու նրանց հետ միաբանող մյուսները հեծան իրենց երիվարները և փախուստի դիմեցին: Հայոց նախարարներն այդ իմանալով՝ հետապնդեցին փախստականներին, բայց քանի որ մարզպանն ու հազարապետը փախչում էին տեղյակ առաջնորդների հետ, գնացին ոչ թե ուղիղ ճանապարհով, այլ զանազան տեղերով և փրկվելով ընկան Արտաշատի բերդը: Հայոց նախարարները չկարողացան հասնել նրանց, բայց պարսիկների բոլոր գրաստները բռնեցին ճանապարհին և մաղխազ Գադիշոյին էլ ձերբակալելով վերցրին իրենց հետ: Հասան Դվին, այնտեղից էլ գնացին*



***Դվին.***
***Կաթողիկոսական պալատի (V–VI դարեր) ավերակները***

*ու պաշարեցին Արտաշատի բերդը: Իսկ մարզպանն ու հազարապետը գիշերը գաղտնի ելան բերդից, փախան-գնացին Ատրպատականի կողմերը:*

*... Ատրվշնասպը շտապ զորք վերցրեց Ատրպատականից և Կոպրեաց մարզպանից, ինչպես նաև առավ Կատշաց[7] զորքը, որ այն տեղերում էր,– եկավ, հասավ Հայոց աշխարհը, Երասխ գետի եզերքը: Ցանկացավ անցնել Նախճավան գյուղը, որ սահմանակից էր Սյունիքին:*

***Գլ. ԿԸ.*** *Այն ժամանակ հայտնեցին Բագրատունյաց տեր Սահակին[8], թե հայերն ու հայոց զորավար Վահանը Հայոց երկրի վրա մարզպան են կարգել. [իրեն՝] Սահակ ասպետին տրվել է մարզպանությունը, Վահանին՝ Մամիկոնեից տերությունն ու Հայոց սպարապետությունը, որոնք նախ հաստատվել են Աստծո հրամանով, ապա ընդունվել հայերի կողմից: Հետո նրանք լսեցին պարսից զորքի գալու*

*բոԹը: Տեսնելով իրենց զորքի պատրաստության անկազմակերպ վիճակը, մտածում էին առժամանակ փոխադրվել Տայոց գավառի որևէ ամուր տեղ: Եվ դարձյալ հիշելով Աստծո ամենահաղԹ օգնու- թյունը, ասացին, Թե «ՀաղԹանակը ձեռք է բերվում ո՛չ Թե շատ կամ քիչ զորքով, այլ Աստծո ձեռքով, մանավանդ մե՛ր գործերը, որոնք միանգամայն նրա շնորհելիք հաջողությանն են սպասում: Այժմ ան- հրաժեշտ է ուրիշ ոչինչ չմտածել, այլ շտապով գնալ նրանց դեմ և հաղԹության զորությունն էլ հայցել Ամենափրկչից»: Նրանք այսպես էին մտածում Աստծո Թելադրանքով: Եվ մարզպան Սահակը, հայոց սպարապետ Վահան Մամիկոնյանն ու նախարարներից ոմանք մնա- ցին ոստանում՝ առաջ գնացողներին քաջալերելու և բարի հույս ներ- շնչելու, իսկ անօրեններին սրտաբեկ անելու և սարսափեցնելու հա- մար: Այնուհետև պատերազմի պատրաստվեցին Բաբգեն Սյունին, որն այն ժամանակ էլ կոչվեց Սյունյաց իշխանության տեր, Մամիկո- նեից ամենաքաջ սեպուհ Վասակը՝ Վահան սպարապետի եղբայրը, մաղխազ Գարջույլը, Արշավիր Կամսարականի երկու որդիները՝ Շի- րակի տեր Ներսեհն ու նրա եղբայր Հրահատը, և Գնունյաց տոհմից երկու մարդ՝ Գնունյաց իշխան Ատոմն ու նրա եղբայր Առաստոմը, ինչպես նաև նրանց զորքը, որ Թվով չորս հարյուր մարդ էր ընդամե- նը:*

*Մտնելով եկեղեցին, նրանք երկրպագեցին Աստծուն՝ ամենայնի արարչին ու զորացնողին և նրանից խնդրեցին՝ իրենց օգնական ուղարկել Սուրբ նահատակ Գրիգորի, հայոց բոլոր սրբերի և այժմ նահատակված քրիստոսասերների սրբազան ճգնությունն ու Սուրբ Խաչի զորությունը: Եվ Փրկիչ Քրիստոսը մարդասիրաբար գԹալով ու նայելով նրանց արժանավորապես խնդրածներին՝ նրանց հետ օգնա- կաններ առաքեց՝ ինչ որ խնդրել էին իրենից, և խաղաղությամբ ճանապարհ դրեց: Նախարարներն ու նրանց հետ եկած բոլոր զորա- կան մարդիկ երկրպագեցին նաև հրեշտակակրոն սուրբ կաԹողիկոս Հոհանին[9], որը հոգեղեն սնունդ մատակարարելով՝ նրանց պատե- րազմ ճամփեց իր ճշմարիտ ու արդար ոգու օրհնությամբ:*

*Ապա հրաժեշտ տվին ասպետ Սահակ մարզպանին, հայոց զորա- վար Վահան Մամիկոնյանին ու իրենց մյուս ընկերակիցներին, որոնք այնտեղ՝ ոստանում էին մնալու նրանց հետ, և արագ հեռացան խնդալից հոժարությամբ: Մտքներում անհանգստացած նրանք ասում էին. «Ո՞վ գիտե՝ կկարողանա՞նք հասնել գետի այն հունը, որով պարսից զորքն է կամենում անցնել, որպեսզի այնտեղ մի Թաքստոց-վայրում սպասենք և երբ տեսնենք, որ զորքի կեսը գետն*

*անցել է, Թափվենք անցկացածների վրա, գուցե կարողանանք կոտորել: Այդպես էլ նրանցից հետո մնացածների հարցը կկարողանանք հեշտությամբ լուծել»:*

*Եվ գալով Վարազկերտ գյուղը, լսեցին, թե պարսից զորքն ամբողջովին անցել է գետը և ունի յոթ հազար զինվոր: Մամիկոնեից քաջ սեպուհ Վասակը, քանի որ առաջապահն էր այնօր, առաջ գնաց Կովակք անունով գյուղը[10]: Մտածում էր՝ մի հնար գտնել իմանալու պարսից զորքի հանգամանքները: Ասում էր՝ տեսնեմ մի բա՞ն են թե ոչ: Նա գնաց Կովակքում օթևանելու: Բայց առավոտ ծեգին այնտեղ հասավ նաև պարսիկ մարզպան Ատրվշնասպը և լսեց, որ այնտեղ է Վասակ Մամիկոնյանը: Եվ Մամիկոնեից քաջ սեպուհ Վասակն, իմանալով Ատրվշնասպի ու մյուսների այնտեղ գտնվելու մասին, խիզախությամբ հնար գտավ փրկության, որպեսզի նույն ժամում իր զորքն այնտեղից դուրս բերի անվնաս: Կարգադրեց երկու-երկու, երեք-երեք զույգերով կամ ավելի մեծ խմբերով փողոցներով կամ այլևայլ անհայտ անցուղիներով դուրս գալ շենից և իրարից անջատ շտապել հասնելու Վարազկերտ գյուղը, ուր հայոց նախարարները և այրուձին էին գտնվում, այնտեղ էլ տեղեկությունը հաղորդել նրանց: Իսկ ինքը՝ Մամիկոնեից քաջ սեպուհ Վասակը պատգամավորներ հղեց և սուտ խոսքով մոլորեցնելու համար Ատրվշնասպին հայտնեց, թե «Ես հայոց մասին քեզ ասելիք ունեմ, որը լսելով՝ դու և քեզ հետ եկածները հաստատապես հաճելի ու օգտակար պիտի համարեք Արյաց արքայի և Հայոց աշխարհի համար»: Ատրվշնասպն այս լսելով, թեպետ և մտքում գաղտնի ուրախացավ՝ կարծելով, թե հաստատ գալիս են հանձնվելու, սակայն նրա մոտ հղելով իր բանբերին՝ խստագույնս հարցրել էր, թե «Մի ապստամբ աշխարհ ի՞նչ ունի ինձ հղելու»:*

*Եվ Մամիկոնեից քաջ սեպուհ Վասակը, արդեն համոզված, որ իր այրուձին գյուղից հեռացել է անվնաս, և որ այնուհետև ոչ մի վտանգ չկա, Ատրվշնասպի կողմից եկածներին ասաց. «Մենք մինչև այսօր ոչ մի վատ բան չենք արել և արքունի գործերին էլ ոչ մի վնաս չենք տվել: Բայց դու ինձ հրամայիր հաղորդել պատգամ, որպեսզի դուք է՛լ լսեք, ապա տեսնեք ու հասկանաք, թե ի՛նչ է արժանի և ի՛նչ պիտի անել»: Եվ պատգամավորներին արձակելով, ինքը հեծավ իր երիվարը և այնտեղ գտնվող մյուս պարսիկներին ասաց. «Ես ծաղրի համար ձեզ մոտ այդպես խոսքեր ասացի պատգամավորներին: Ինձնով ոչ ոք ոչ մի պատգամ էլ չի հղել ձեզ: Ես եկել էի ձեզ տեսնելու, որ իմանամ՝ ի՛նչ եք, ինչացո՛ւ: Բայց դուք վատ մարդիկ եք ու անպիտան և եկել եք չարություն անելու, ուրեմն և կհանդիպեք չարության ու կկոր-*

*չեք»: Այսպես խոսելով՝ քաջ տղամարդը հեռացավ հանգիստ ու աներկյուղ: Եվ այդ քաջը հասնելով հայոց զորքին, պատմեց, որ պարսից զորքը շատ մեծ է, բայց նրա մեծ մասը կազմում են անպիտանները՝ զոռով մի տեղ հավաքված ցնցոտիակիր էշ քշողներ:*

*Եվ այսպիսի խոսքեր լսելով Մամիկոնյան քաջ սեպուհից, հայոց զորքի մարդիկ միաբանությամբ իրենց մեջ խորհուրդ արին ու մտածեցին, որ անհրաժեշտ է դաշտից տեղափոխվել լեռնակողմը: Եվ միաբան խորհուրդն էլ այս էր. «Եթե կռվելու ենք,– ասացին,– ապա Աստծո օգնությամբ այնտեղ զորանանք, որ հաջող է ու բարի, իսկ եթե ուրիշ որևէ բան պատահի, ապա լեռնակողմի ամրությունը մեր պաշտպանությունն է ու մեր օգուտը»: Եվ քաշվեցին, գնացին Մասյաց այն գյուղը, որի անունն է Ակոռի:*

***Գլ. ԿԹ***. *Լսելով, որ վաղը պարսից զորքն իրենց վրա պատերազմի է գալու, այն օրերի սովորության համաձայն, նրանք շտապեցին գիշերային պաշտոն կատարել: Եվ առավոտյան աղոթքներն էլ ավարտելով՝ բոլոր այնտեղ գտնվողները կազմ ու պատրաստ պարսից դեմ ելան պատերազմելու: Չորս հարյուրը չորս մասի բաժանելով, այնժամ միջի մասի զորագլուխներ կարգեցին Սյունյաց իշխան Բաբգենին և Մամիկոնեից քաջ սեպուհ Վասակին, ձախակողմում՝ մաղխազ Գարջոյլին, իսկ աջակողմում՝ երկու Գնունիներին՝ Գնունյաց իշխան Ատոմին ու նրա եղբայր Առաստոմին: Իսկ երկու մասերի արանքում դասավորեցին Շիրակի քաջ ու ընտիր իշխան Ներսեհ Կամսարականին ու նրա եղբայր Հրահատին իրենց զորքով: Ասացին՝ ո՛ր կողմը տկարանա, նրան հասնելով ու փութաջանորեն զորացնելով կօգնեն, որպեսզի բոլոր կողմերից էլ ուժեղ լինեն, քանզի բոլորն էլ վստահ էին այն մարդկանց վրա՝ որպես քաջերի, արդարների և ուխտապահների:*

*Չորս հարյուր մարդկանց դասավորելով այսպես և փառք տալով Աստծուն միաբան աղաղակելով ասացին. «Օգնի՛ր մեզ, մեր Փրկիչ Աստված, հանուն և ի փառս քո անվան: Թող հեթանոսները չհամարձակվեն հարցնել, թե հապա ո՞ւր է նրանց Աստվածը»: Եվ ճակատողները ելան հայտնի սարի[11] լանջակողմի բարձրավանդակը: Հայոց զորքի այս սակավությունը տեսնելով՝ պարսից զորքերը մտածեցին, որ նրանք խելացնորված կամավոր եկել են մեռնելու: Եվ պարսից զորքերից քաջ ու ընտիր ձիավորները հեռվից հարձակվեցին հայոց զորքի վրա: Վատ ձիեր ունեցող պարսիկները ետ մնացին, քաջ երիվարներն իրենց հեծյալներին հասցրին պատերազմի վայրը: Այդ ժամին Գարջոյլ մաղխազը, իր հարյուրակն առած, նենգելով Ավետարանի ուխտին, պարսից զորքի կողմն անցավ: Եվ Աստծո հրամանին հա–*

*մաձայն մնացին Հայոց երեք հարյուրյակը՝ նման Գեդեոնի[12] ընտրած երեք հարյուրյակին[13]: Նրանք դիմեցին դեպի պարսից զորքերը և Բարձրյալի օգնականությամբ առաջանալով բախվեցին հակառակորդի ամենաընտիր տղամարդկանց հետ, պատերազմի դաշտում կոտորեցին, գետնի վրա դիաթավալ արին, իսկ պարսից զորքի մնացած բազմությունը ձորերում ու առապար տեղերում ցրելով ոչնչացրին: Այնտեղ, Մամիկոնենից քաջ սեպուհ Վասակի ու Բաբգեն Սյունիի կողմում ջախջախված ընկան մարզպան Ատրվշնասպը և այլ մեծամեծներ, ուրացած հայ նախարարներից ոմանք և պարսիկներից շատ ուրիշները: Ատոմի և Առաստոմի ձեռքով ևս մահ գտան շատ քաջեր: Իսկ արդարության թշնամին Ատոմի և Առաստոմի ձեռքից մազապուրծ փրկեց Սյունյաց տեր Գդիհոնին և ապրեցրեց, պահեց մի այլ չար գործի համար: Բայց դրանից առաջ երանելի Արշավիր Կամսարականի որդի Հրահատը պարսից զորքից առաջ եկած մի մարդու նիզակահար անելով սատկացրեց:*

*Բայց մինչդեռ նրանք Աստծո աջով քաջալերված պատերազմի մեջ էին մխրճված, մաղխազ Գարջոյլը՝ Կատչաց գնդով, ապստամբ ուրիշ հայ ազատներով և իր հետ գտնվող զորքով հանդերձ, խոր ձորերով աներևույթ անցել, հասել էր ուխտապահ հայոց զորքի թիկունքի կողմը: Կարծելով, թե նրանք Աստծո թշնամիներին կոտորելով զբաղված, իրեն չեն նկատի, կամեցավ թիկունքից հարձակվել Քրիստոսով զորացածների վրա, խաբեությամբ հաղթանակ տանել և մեծ անուն վաստակել: Բայց Կատչաց զորքերի խողխողած մի հայի աղաղակը լսելով՝ մի ուրիշ հայ զինվոր հանկարծ բողոքի աղմուկ բարձրացրեց Կամսարականների շուրջը: Սրանք էլ զայրացան, նույնիսկ ուզում էին այդ մարդուն սպանել, թե մեր զորքն է թիկունքում, և դու քո ստով գործին խանգարում ես: Ապա Ներսեհն իր եղբայր Հրահատի հետախուզությամբ հաստատեց, որ եկող զորքը թշնամական է, և երկու եղբայրները շատ քիչ մարդկանցով հարձակվեցին այն մեծ բազմության վրա: Հերոսական Ներսեհ Կամսարականը հասնելով նիզակահարեց ու սպանեց Կատչաց զորագլխին, որ մի հզոր ու քաջամարտիկ այր էր, և մնացած ամբողջ զորքն առջևից քշելով, պատերազմում ընկած մյուս բոլորից ավելի շատ դիակներ փռեց երկրի վրա: Եվ այն օրը դարձավ Քրիստոսի հավատացյալների ուրախության, ինչպես նաև՝ Քրիստոսին ուրացածների ամոթի ու անարգանքի օր: Եվ ճշգրտորեն կատարելով հաստատվեց մարգարեի խոսքը, որ ասում է, թե «Ում որ օգնի Աստված, մեկը հազարին կհալածի, և երկուսը տասը հազարին կշարժեն»[14]:*

*Երբ որ արդարության թշնամի սատանան տեսավ պատերազմի այս փառավոր ավարտը, ընկճվեց սաստիկ և մտածեց, որ ամեն ինչ, նույնիսկ շատ անհնարին գործերն էլ կատարվեցին իր կամքին հակառակ, բայց, եթե ինչի՛ որ ձեռնհաս չեղավ՝ հաղթվեց, ապա կարող է գոնե մի փոքր տրտմեցնել այն քաջերի սրտերը, որոնք դեռևս տեղյակ չեն իր աղետների ու պարտության հանգամանքներին: Նա գտավ իրեն արբանյակ դարձած երկու մարդու, մեկը Գնթունյաց տոհմից՝ Վառգոչ անունով, մյուսը Սահառունյաց տոհմից՝ Վասակ անունով: Այս երկուսը վաղ առավոտյան, լույսը բացվելուն պես շտապ եկան և աղմուկ-աղաղակով սուրբ հայրապետ Հոհանի ու հայոց երկու ավագ իշխանների՝ մարզպան Սահակի ու Վահան Մամիկոնյանի ականջներին գուժեցին, թե «Պատերազմի մեջ երկու կողմերը խառնվեցին (նրանք բնավ չէին էլ տեսել պատերազմը), և զորացավ պարսից կողմը, պարտության մատնեց հայոց զորքերին: Փախուստի դիմեցին,– ասում էին,– և թշնամիների սրերից ընկան հայ զորավորները. մեռան քաջ Վասակ Մամիկոնյանը, խիզախ Բաբգեն Սյունին և երկու անվանի տղամարդիկ՝ Շիրակի տեր Ներսեհն իր սիրելի եղբայր Հրահատի հետ: Գնունիներ Ատոմն ու Առաստոմը և հայոց մնացած ամբողջ զորքը Ակոռիի լանջակողմում գետին տապալվեցին ու դիակնացան: Հոբի[15] գուժկաններից միայն մենք մնացինք, որ եկել, ահա ձեզ ենք պատմում»:*

*Եվ այս գուժը դեռ չէր տարածվել Դվինում, որպեսզի չար դևը չուրախանա՝ քաղաքը շատ աղմուկ գցելով, երբ վաղվաղակի եկավ-հասավ ավետաբեր հրեշտակը Գնունյաց տոհմից, որի անունն էր Առաստոմ: Նա բարձրագոչ ձայնում էր. «Հաղթե՜ց Սուրբ Խաչի զորությունը, որ մի՜շտ է հաղթում»:*

*... Նրանք հետո անհոգ խաղաղությամբ ընդունեցին ձմեռային հանգիստ օրերը և պատրաստություն տեսան գարնանը պատերազմելու համար:*

***Գլ. Հ.*** *Նրանք շուտափույթ կերպով դեսպան ուղարկեցին վրաց Վախթանգ թագավորի մոտ, որպեսզի նա, իր խոստման համաձայն, հոն զորք տա իրենց: Սա էլ ժամավաճառ խոսքերով ձգձգում էր իր անելիքը, հետո էլ ինչ-որ մի երեք հարյուր հոն հավաքեց և ուղարկեց Հայաստան: Եվ ձմեռվանից մեկ ամիս չանցած՝ ինչ-որ պատճառաբանությամբ փութով նրանց վերստին իր մոտ կանչեց: Եվ Հայոց աշխարհին օգնական մնաց Քրիստոսի զորությունը, որին ապավինել էին հույսով, իսկ մարդկանցից ոչ ոք չկար, որ օգներ նրանց:*

***Գլ. ՀԱ.*** *Ձմեռային դառնաշունչ ցրտի օրերն անցկացնելով՝ հասան*

*գարնանային ժամանակի բարեխառն եղանակին[16]։ Լուր հասավ, թե պարսից բազմաքանակ զորքն է գալիս, և, իբր արդեն Հեր ու Զարևանդ գավառի սահմանին են հասել չատ զորագլուխներ, որոնք են՝ Սուրեն Պահլավը, փուշտիպանան սաղար[17] Ատրներսեհը, Վին-ի-Խոռյանը, Ատրվշնասպ-ի-Տապյանը, Սյունյաց տեր Գդիհոնը։*

*Հայոց զորավար Վահան Մամիկոնյանը ևս չտապեց։ Նա իր հետ առավ նաև Հայոց Սուրբ հայրապետ Տեր Հոհանին։ Եվ հայոց զորքը գումարելով՝ նա փութաջանորեն ուզում էր պարսից դեմն առնել հենց այն տեղերում։ Ասում էր. «Թերևս կարողանանք թույլ չտալ, որ պարսիկ բազմությունն անցնի Հայոց երկրի միջնաշխարհը»։ Եվ իր հետ առնելով նախարարներին, ազատներին ու բոլոր ռամիկներին, որոնք ինքնահոժար և խնդությամբ ելել էին պատերազմի, նա հայոց զորքը Դվինից հանեց, գիշերային ժամերին գնալով հասավ Արտազ գավառը և մոտենալով պարսից զորքին, բանակեց մի գյուղում, որի անունն էր Ներսեհապատ։*

*Սուրբ Հոհան կաթողիկոսը հայոց բովանդակ զորքին կարգադրեց ամբողջ գիշերը ջերմեռանդ աղոթքներով պարապել և մարդասեր Փրկչից խնդրել բարձր պահելու իր մեծ անունը՝ հավաքված հեթանոսների բազմության մեջ, իր ծառաներին արժանացնել պարծանքի բաժնին, իսկ ուրացողների դասին բաժին հանել ամոթը։ Եվ հենց այդպես էլ հայոց զորավար Վահան Մամիկոնյանը, սքանչելի ասպետ ու մարզպան Սահակը և հայոց ամբողջ զորքը միահամուռ ու միասիրտ, հորդորալից հոգով խնդրում էին Աստծո օգնությունը, կատարում սահմանված գիշերային ժամերգությունը։ Եվ հասնելով առավոտյան լույսին՝ Հայոց Սուրբ հայրապետ Հոհանն օրհնեց ամենքին ու քաջալերելով ասաց. «Աստծո վրա հույս դնողները երբեք չեն ամաչել։ Եվ Սուրբ Հոգու ընտիր անոթ Պողոսը համարձակաձայն գոչելով ասում էր. «Հույսը երբեք ամոթահար չի թողնում նրանց, ում սրտում սփռված է սերն Աստծո»[18]։ Զորացե՛ք Աստծով ու նրա բազկի ուժով, և այնժամ կկարողանաք կասեցնել չարի բոլոր երևացող ու աներևույթ նետերը։ Թող ոչ ոք չզարհուրի՝ նայելով անօրենների զորական բազմությանը, քանզի ձեզ հետ լինելով՝ Աստված ձեզ էլ նրանց աչքո՛ւմ է ավելի չատ ցույց տալիս, և նրանց չարժելով, ինչպես խոփվը սաստիկ հողմից, կցրի դաշտերի ու բլուրների վրա, վեր ու վար կկործնի։ Արդ, թող ձեզ օրհնի, զորացնի, առաջնորդի և հաղթող դարձնի հզոր այն Աստծո։ Փա՜ռք նրան, իր Որդուն և Սուրբ Հոգուն՝ միչտ և հավիտյանս։ Ամեն»։*

*Այս խոսքերից հետո պատրաստվեցին պատերազմի։ Հայոց զինա-*

*վառ գնդերը ելան թշնամիների դեմ, և երանելի Հոհանն էլ աղոթում էր:*

*Այնուհետև հայոց զորավար Վահան Մամիկոնյանն սկսեց ըստ պատշաճ կազմակերպել ճակատի յուրաքանչյուր թևը: Կենտրոնական կողմը բազմաքանակ այրուձիով տվեց մարզպան ու քաջ ասպետ Սահակի ձեռքը: Աջ թևում կարգեց Բարշղ Վահևունուն, Բաբգեն Սյունիին, Ատոմ Գնունիին և Փապակ Պալունիին՝ յուրաքանչյուրի այրուձիով ու այլ հավելվածով: Իսկ ձախակողմը հանձնեց ուխտասեր Կամսարականներին՝ Վահանին, Ներսեհին, Հրահատին, և իր սիրելի եղբայրներին: Աջ կողմում, գնդերի յուրաքանչյուրից մեկական այրուձիով, ինքն էր լինելու: Ուրիշ ավագ տղամարդկանցից էլ կազմեց մի ջոկ՝ ընտիր այրուձիով, Վրեն Վանանդացու գլխավորությամբ, որի մոտ ուղարկեց ոստանիկ Արտակունյաց Պապին՝ Բաբոցի որդուն: Եվ բոլոր թևերի ավագներին այսպիսի հանձնարարություն հղելով՝ ասաց. «Դեպի մեզ են գալիս պարսիկների, կատիչների ու Սյունյաց գնդի հզորագույն զորականները, որոնց առաջուց գիտենք ըստ իրենց դրոշների: Այժմ դուք հանդարտ գնացեք և ուշադիր հետևեցեք մեզ: Առաջ մե՛նք կհարձակվենք: Եթե Քրիստոսի շնորհիվ մեր կողմում թշնամուն շարժենք ու փախցնենք, ապա մյուս թևերը մեր ու ձեր առաջ չեն կարող դիմանալ»:*

*Պապը հայոց սպարապետ Վահան Մամիկոնյանի պատգամը տարավ բոլոր թևերի ավագներին: Թեպետ և ցանկանում էր գործել ըստ սպարապետի հրամանի, սակայն շուտով պարսից զորքերը շարժվեցին բոլոր թևերով և չթողեցին հանգիստ մնալ, այլ աջ թևում, ուր Բաշղ Վահևունին էր, ստիպեցին փախչել: Եվ տեր Սահակ ասպետը նիզակով հարձակվեց փուշտիպանաց սաղարի վրա: Երկուսի նիզակներն էլ վրիպեցին, և երիվարների վրա մոտենալով միմյանց, նրանք իրար մազերից բռնած էին կռվում: Հայոց զորավար Վահան Մամիկոնյանը, տեսնելով, որ հայոց զորքերը չփոթվելով տկարացան թշնամու առաջ, ձայն տվեց Վրեն Վանանդացուն. «Հառաջացի՛ր,— ասաց,— թշնամիների վրա և պատերա՜զմ ձեռնարկիր»: Նա զարհուրած պատասխանեց, ասաց. «Չե՛մ կարող. այս ժամին դու հույսդ ինձ վրա մի՛ դիր»: Եվ հայոց զորավար Վահան Մամիկոնյանը զորացավ սրտով, երեսը խաչակնքեց ու երկու Կամսարականների հետ միասին հարձակվեց իրենց հասած թշնամիների վրա: Իսկ նրանք, առանց դիմադրելու, այլ իրենց թևը միանգամից սաստիկ տեղահան անելով՝ փախուստի մատնվեցին: Եվ այն թևն առնելով՝ մյուսն էլ քաշեցին կենտրոնի վրա: Հայոց զորավար Վահան Մամիկոնյանի քաջերը երկու թևերի թշնամական զորքն առաջներն արած տարան դեպի*

*փոքր լանջակողմը և քաջ զինվորների անթիվ բազմություն դիաթավալ անելով, ջախջախեցին ու սաստիկ արյունահեղություն արին: Եվ միայն Խորյան Վինը, ուրիշ երկու նիզակակիցների հետ միասին, չուռ էր եկել, խիզախորեն դիմադրում էր: Այնտեղ էլ Հայոց քաջ զորավար Վահան Մամիկոնյանն իր հզորությամբ սպանեց նրան: Եվ Շիրակի տեր Ներսեհ Կամսարականն էլ՝ Ատրվշնասպ Տապյանին, իսկ մյուսներից էլ յուրաքանչյուրը շատ քաջերի գետնատարած տապալելով՝ կոտորեցին: Եվ Բարշղի ու Հայ մյուս փախստականների գունդը, տեսնելով, որ պարսից զորքերը թուլացած փախչում են Հայոց զորավար Վահանի գնդի առաջ, ոգեպնդված զորացան և այնտեղից վերադառնալով, հալածողների ետևից ընկան, շատերին կոտորեցին ու շատերին էլ առաջներն արած հալածեցին: Պարսից զորքերից սպանվածների թիվն ավելի մեծ էր, քան փախչելով փրկվածներինը, քանի որ մեռածների թվի մեջ էին ոչ միայն պատերազմի վայրում ընկածներն, այլև շատերը, որոնք վիրավորված էին և մեռան այս ու այնտեղ:*

*Եվ Հայոց զորքը բարի անվամբ ու մեծ փառքով, լավ ավարով ու ահռելի հարստությամբ վերադարձավ բանակատեղ, Հայոց պատվական կաթողիկոս Հոհանի մոտ՝ փառք տալով ու օրհնելով այդպիսի հաղթանակը պարգևող Քրիստոսին: Եվ Հոհան կաթողիկոսն էլ, ընդառաջ գալով հաղթանակած զորքին, ցնծալից սրտով օրհնեց նրանց, ապա, զվարճացած սուրբ զորության Հոգով, բոլորին ասաց. «Ուրախ եմ հույժ և խոսքով չեմ կարող արտահայտել սրտիս խնդությունը: Բայց սրտով առավել զվարճացած երջանկանում եմ՝ տեսնելով, որ ձեր գործակիցն է Քրիստոսը, որը հաղթանակ պարգևեց ձեզ և ամոթահար արեց արդարության հակառակորդներին: Եվ Աստված, որ զորացրել էր ձեզ այժմ, կզորացնի նաև միշտ և ձեզ հետ լինելով՝ ձեզ չի լքի երբեք»:*

***Գլ. ՀԲ.*** *Մինչդեռ զորացած ու ցնծալից սրտով վերադառնում էին պատերազմից, որը հաղթությամբ էին ավարտել Բարձրյալի թելադրությամբ, ըստ սուրբ հայրապետ Հոհանի ու Հայոց բոլոր զորքերի ցանկության,– երկրորդ մեծ ուրախությունը և հանկարծակի պատահածի ավետիքը քարոզի պես տարածվեցին Հայոց ամբողջ բանակում: Ողջ-առողջ եկավ Հայոց զորավար Վահան Մամիկոնյանի եղբայր Վարդը՝ Աստծո զորությամբ ազատված պարսից կապանքներից: Այդպիսի ավետավոր համբավով լցված էր Հայոց համայն աշխարհը:*

***Գլ. ՀԳ.*** *Այնուհետև [Հայոց զորքերը] եկան, հասան Ծաղկոտն գավառը և ցանկացան մի քիչ հանգստանալ Վարշակ կոչված ջերմուկի*[19]

*մոտ, երբ վրաց թագավոր Վախթանգից դեսպանը լուր բերեց, թե «Վրաց երկիրը մեծ զորք է եկել, և ես, տեսնելով, որ չեմ կարող դիմակայել, խույս եմ տվել վրաց սահմանակից Հայոց լեռները և այստեղ եմ մնում»: Դեսպանը Վախթանգից ուներ նաև խաբեական նամակ, որի մեջ գրած էր, թե «Հրաման եմ տվել, որ հոնաց զորքը գա, դեռ չի եկել: Բայց մինչև դուք գաք, նրանք էլ կհասնեն, և այնուհետև դուք, մենք ու հոները նրանց կոչնչացնենք: Սակայն ինձ թվում է, թե երբ հոները հասնեն, մենք անելու բան էլ չենք ունենա. նրանք են գործն ավարտելու, քանի որ հրաման եմ տվել, որ անհամար բազմություն գա»:*

*Եվ քանի որ Ավետարանով ու խաչով տված երդում ունեին վրաց Վախթանգ թագավորի հետ, հայոց զորավար Վահան Մամիկոնյանը, բոլոր ավագ տանուտերներն ու սեպուհները, հայոց ամբողջ զորքով անհապաղ հասան վրաց թագավորի մոտ և բանակելով Կանգարք գավառի*[20] *մի վայրում, սակավ ինչ հանգստացան: Այստեղ վրաց թագավոր Վախթանգը կեղծ ու խաբեական խոսքերով մոլորեցնում էր հայոց զորավար Վահան Մամիկոնյանի ու հայոց մյուս տանուտերների մտքերը՝ մերթ ասելով, թե «Միհրանը ձեր գալու մասին լսելով՝ խույս տվեց վրաց սահմաններից, Աղվանք փախավ երկյուղից», մեկ էլ թե. «Երկու օրից հոնաց զորքերը կհասնեն»: Ժամադիր խաբեության երկու օրն էլ անցավ, երրորդն էլ, չորրորդ օրվան ձգեց պայմանադրությունը, նրանից հետո էլ՝ վեցերորդին, յոթերորդին: Հետո էլ վրաց ու հայոց զորքերից խուզարկու մարդիկ ուղարկեց: Երբ սրանք էլ իջել էին ինչ-որ դաշտավայրային տեղեր, այնտեղ էլ ցույց տվեց չատ կրակների լույսեր ու զինված մարդկանց նմանվող ծառակոճղեր: Հետո էլ ասում էր. «Հոնաց զորքերը մեզ մոտ այս լեռները չեն գալիս, այլ ասում են՝ այստեղ, դաշտում մեզ ցույց տուր հայերին, որպեսզի հավատանք քո ամեն խոսքին, որ ասել ես մեզ ու երդվել»: Այնուհետև, իբր, ասել են.– Ինչ որ մեզ հրամայես, կկատարենք, ապա թե ոչ, չենք հավատում, թե հայերը քեզ հետ միաբան են: Իսկ որ դա արդարև տեսնենք, հետո պարսիկներին մեզ թողեցեք, դուք այլևս գործ չունեք:– Այսքանից հետո էլ վրաց թագավորն ավելացրեց.– Արդ, եթե դուք դաշտը չիջնեք, իսկ հոնաց զորքն էլ, ինձ չհավատալով, դաշտավայրից դեպի վեր ոչ մի տեղ չշարժվի, և Միհրանն էլ վերադառնա ու Վիրքն ավերի, ձեր գալուց ինձ ի՞նչ օգուտ»:*

*Եվ հայոց զորքը, որ ուխտադիր էր վրաց թագավորի հետ, սուտ թե ճշմարիտ նրա բոլոր ասածները ջանում էր կատարել՝ Ավետարանին տված երդման երկյուղից: Եվ թեպետ ժամանակը տոթ էր,*

*ստիպված էին իջնել Ճարմանայնու դաշտը[21]: Հայոց իշխաններից ոմանք հաջող բան չէին համարում իրենց Վիրք իջնելը, և Թեկուզ այս մասին շատ անգամ ասացին, քանի որ իրենց հավատացողներ չկային, իրենք էլ ստիպված եղան լռել:*

*Հայոց զորքն իջավ Վիրք, բանակեց նախահիշյալ տեղում, և երեք Թե չորս օր էլ չանցած Միհրանը եկավ, հասավ ու բանակ դրեց Հայոց զորքին դեմ-հանդիման, Կուր անունով գետի մյուս ափին: Հայոց բանակը տեղափոխվեց պարսից բանակից հեռու մի այլ տեղ և օԹևաններ դրեց: Եվ Հայոց զորքից շատերը, մոռացած Աստծո ուխտի ահը, ոտնահարելով Ավետարանի ահավոր երդումը, այն գիշեր գաղտնի պատգամագնացուԹյամբ խոսեցին պարսից զորքերի մեջ գտնվող իրենց սիրելիների հետ, Թե «Մենք Հայոց զորավար Վահանի բռնուԹյամբ և ոչ Թե մեր սրտի կամքով ենք ընկել այս վիճակի մեջ: Բայց մեր մտքերն ու ցանկուԹյունները ձեզ հետ են: Եվ գիտենք, որ ձեր հպատակուԹյունից դուրս չենք գալու, այլ մեր անձերի վրա մինչև այսօր մեղքեր ենք բարդել՝ ի վնաս մեզ: Բայց հիմա դո՛ւք գիտեք. Թե որ մեր այս բանը երբեք չեք հիշի և մեզ ներողուԹյուն չշնորհեք, առավոտյան, երբ գանք կռվի վայրը, մենք էլ ինքներս ու մեզ հետ էլ շատերին վերցրած՝ կփախչենք բանակից»: Եվ նրանք իրենց այս խոսքերը հաստատեցին՝ պարսիկների ուխտի երդում ընդունելով:*

*Հաջորդ օրը պատերազմի դաշտ հասնելով՝ այնժամ վրաց արքան խոսեց Հայոց զորավար Վահանի և Հայոց ուրիշ տանուտերների ու սեպուհների հետ, ասաց. «Լավ եղավ, որ մենք այսօր ենք կռվում պարսից զորքերի դեմ, քանզի հենց մենք էլ բավական ենք սրանց, չեն դիմանա մեր առաջ: Իսկ եԹե այսօր էլ մենք ուշացնեինք, հոները գալու էին, և հաղԹական անունն ու ավարի օգուտն իրենք էին տանելու»:*

*Եվ մինչև այս ժամն էլ ձգձգելով՝ նա խաբում էր կեղծ խոսքերով:*

***Գլ. ՀԴ.** Վրաց արքայի սուտ ու անպիտան խոսքերից վրդովված էր Հայոց զորավար Վահան Մամիկոնյանը: Ծանոթանալով նաև Հայոց զորքի ԹուլուԹյանը, լքածներին ու մեղկացածներին, որոնք բոլորովին նման չէին ուրիշ ժամանակների եռանդուն ու հոժարակամ զորականներին, այնուամենայնիվ, Վահան Մամիկոնյանը Հայոց զորագնդերը կազմեց ու պատրաստվեց ըստ պատերազմի օրենքի: Եվ աջ Թևը տալով Բարշղ Վահևունու ու Սատոն Գաբեղինու ձեռքը, իսկ ձախ Թևը՝ վրաց արքա ՎախԹանգին հանձնելով, կենտրոնական մասն ինքը վերցրեց՝ երանելի Արշավիրի երեք որդիների և Գնունյաց երանելի տիրոջ հետ միասին: Եվ երանելի ասպետ Սահակին ու Սյունյաց Բաբգենին էլ իր ու Բարշղի արանքում կանգնեցրեց:*

*Կռիվը դեռ չէր սկսվել, մինչդեռ պարսից ու հայոց կողմերը կանգնած էին ճակատ ճակատի, միմյանց դեմ-հանդիման, և նրանք, որ այնօր ընդունելու էին նահատակության պսակը, Վերին զորությունը նրանց ցույց տվեց, և նրանք մտքի աչքերով, նահատակությունից առաջ, հայտնապես տեսան իրենց դեմքերի անծածուկ ահագնափոխությունը. բնական մահկանացու տեսքից փոխվեցին, ընդունեցին վերին զորությունների՝ հրեշտակների կերպարանքը: Մանավանդ հայոց զորավար Վահանի եղբոր՝ քաջարի Վասակ Մամիկոնյանի դեմքը, որ փառավորվեց Աստծո լուսապսակով, և սրբի շատ ընկեր-նիզակակիցներ, նայելով նրա փայլակնացայտ դեմքին,– որ նման էր մեծ մարգարե Մովսեսի փառավորված դեմքին,– չէին հագենում դիտելուց: Եվ նրա մեծ եղբայրը՝ հայոց զորավար Վահանն էլ տեսավ այդ ու սաստիկ զարհուրած՝ անմիջապես հասկացավ, որ սա իրենից ու այս զազրելի կյանքից հեռացել, գնում է հրեշտակների բանակը, և հենց այսպիսին են այն բանակի զորականների տեսքն ու կերպարանքը:*

*Հայերն ու պարսիկները հարձակվեցին միմյանց վրա: Հայոց զորավար Վահանը և Կամսարական երեք եղբայրները միասին հարձակվելով իրենց թևի թշնամիների վրա՝ ցանուցիր արեցին, փախուստի մատնեցին պարսից զորքերից շատերին, քշեցին-անցկացրին Կուր գետի մյուս կողմը և պարսից զորական երևելի մարդկանցից շատ շատերին էլ քաջաբար կոտորեցին: Այնտեղ Մամիկոնեից քաջ սեպուհ Վասակը նիզակով ուժգնորեն զարկեց մի հզոր տղամարդու և տապալեց, բայց և հանկարծակի կոտրեց իր նիզակը: Քաջ Վասակ Մամիկոնյանը մի ուրիշ նիզակ փնտրեց և գտնելով՝ այնտեղից չտապ վերադարձավ ուրախությամբ: Եվ հետո հանդիպելով Շիրակի տեր Ներսեհ Կամսարականին, որը նոր էր կոտրել իր նիզակը և ուրիշն էր փնտրում, քաջ Մամիկոնյան Վասակը ձայնը գցած կանչեց. «Շտապիր նիզա՛կ գտնել, Ներսեհ, և արագ դարձիր, ե՛կ, քանզի էլ երբեք չենք կարողանա այսպիսի սքանչելի վաճառի ժամ գտնել, երբ մահն անմահություն է պարգևում, ժամանակավորը՝ հավիտենություն, ապականացուն՝ անապական կյանք: Շտապի՛ր, քանզի չենք ապրելու հավիտենաբար, և չլինի՜, թե անունից ու փառավոր վախճանից վրիպելով՝ անանուն ու անպիտան մահվամբ այս կյանքից հեռանանք»: Այս ամբողջը հենց իրենից՝ սուրբ այր Վասակ Մամիկոնյանից լսած լինելով, հավաստի երդումով քանի՜ անգամ մեզ պատմել է ինքը՝ Շիրակի տեր Ներսեհ Կամսարականը:*

*Մինչդեռ հայոց զորավար Վահան Մամիկոնյանն իր երանելի եղբայր Վասակի ու Արշավիր Կամսարականի երկու որդիների հետ այս-*

*պես ճակատում էր, Հայոց ու վրաց բոլոր գնդերը հանկարծ միանգամից ետ դարձան ու դիմեցին փախուստի: Ընդ որում, նենգավորներից շատերն էլ իրար կանչելով անհանգիստ աղաղակում էին, թե «Հայերը փախա՜ն, ձեզ փրկեցե՛ք»: Եվ որովհետև Վերին Ամենագետի զուգակշռող աջը իր ծածուկ ու անքնին կանխատեսությամբ մարտիրոսական բախտ է շնորհում ոչ թե փութաջանության ու ջերմեռանդության համար,– ապա հայոց քաջ զորավար Վահան Մամիկոնյանը և նրա ուխտապահ մյուս ընկերները, որ ախորժելով տենչում էին մարտիրոսության բաժակն ըմպել, սակայն չեղան արժանի՝ այնուհետև իրենց երիվարների սանձերը դարձնելով՝ իրենք էլ հետևեցին հայոց փախստականներին: Հայոց զորավար Վահան Մամիկոնյանը եկավ-հասավ պարսիկներից ծանր վիրավորված Բաբգեն Սյունիին, որին նստեցնելով իր նժույգի վրա, պատերազմից հանեց և փրկեց կյանքը:*

*Իսկ հայոց ամբողջ զորքերը, որոնց հետ և վրաց անպիտան զորքը՝ իրենց Վախթանգ թագավորով հանդերձ, ցրվելով սպառվեցին: Նրանց հետապնդելով՝ պարսից գնդերը շատերին կոտորեցին, շատ-շատերն էլ այլևայլ տեղեր փախչելով փրկվեցին:*

*Բայց Հրահատ Կամսարականի ձին ուժեղ վազքի ժամանակ նրան վայր գցեց, և, քանի որ հետիոտն էր մնացել, պարսիկները հասան ու բռնելով տարան Միհրանի մոտ: Միհրանը նրան տեսնելով շատ ուրախացավ. խիստ խոսքերով տանջում էր նրան և կապոտել տվեց ու կարգադրեց պահել զգուշությամբ: Հետո Հայոց աշխարհում ուր էլ գնար, տանում էր իր հետ: Նրա հետ բռնված էին նաև Սյունյաց մի սեպուհ՝ Յազդ անունով, և մի քանի ուրիշները վրաց աշխարհից:*

***Գլ. ՀԵ.** Զորավար Վահան Մամիկոնյանը գնաց Տայոց գավառի խուլ վայրերից մեկը, ուր և նրա մոտ հավաքվեցին հայ փախստական սինլքորներն ու հայոց ավագ նախարարներից ոմանք: Երկու Կամսարականները միշտ նրա հետ էին՝ նրանից անբաժան ու միաբան: Նրանց ետևից Միհրանը եկել էր իր գնդով և ջանում էր կամ պատերազմով կոտորել, կամ հնարքներով բռնել և կամ համոզելով հպատակեցնել:*

***Գլ. ՀԶ.** [Այդ ժամանակ] հանկարծ արքունիքից դեսպան եկավ, և Միհրանին շտապ կանչեցին Տիզբոն: Եվ նա ամբողջ իր բազմությամբ ճեպով վերադարձավ Պարսկաստան՝ գերած-կապած իր հետ տանելով Հրահատին, երանելի Յազդին ու այլ կալանավորների:*

***Գլ. ՀԷ.** [Միհրանի հեռանալուց հետո] հայոց զորավար Վահան Մամիկոնյանը ճանապարհ ընկավ, եկավ-հասավ Այրարատ գավառը և Վաղարշապատ քաղաքում, իր ուխտապահ նախարարների ու հա-*

*յոց զորքի հետ միասին, պատարագների ուխտ կատարեց Աստծո տանը և նահատակված կույսերի վկայարաններում[23]: Պատարագների ուխտ կատարեց և Աստծո ընծաների սովորական նվերները մատուցեց: Նախ հոգացին աղքատների պետքերը, ապա մեծ ցնծությամբ իրենք ուրախացան՝ Աստծուն փառավորելով: Հետո էլ այնտեղից գնացին հանգստանալու հայոց բնիկ ոստան Դվինում, մինչև կանցնեին ձմեռային ցրտաշունչ ու սառնամանիքային օրերը:*

***Գլ. ՀԸ.*** *Եկավ գարնանային ծաղկանոցների բուրումնալից հովի, մերկ չքավորների երազած ավետավոր ջերմության ժամանակը: Նրա հետ էլ հանկարծ եկավ, Հայոց աշխարհը հասավ Ջարմիհր Հազարավուխտը՝ պարսիկ անհամար ու ընտիր զորքով: Ծուտափույթ անցկացավ Երասխ գետի կամուրջը և այն օրն էլ բանակ դրեց Արտաշատ կոչված գյուղաքաղաքում:*

*Եվ Հազարավուխտն ու նրա հետ եկած ավագներն առավոտյան շտապ դիմեցին հայոց զորավար Վահան Մամիկոնյանի ու այն ժամին նրա հետ գտնվող զորքերի վրա: Եվ հասնելով Դվին քաղաքի մոտ, Հազարավուխտը ճակատ հարդարեց ըստ պատերազմական գործի օրենքների և, զորքը դասավորելով այն անտառի մեջ, որ Խոսրովակերտ է կոչվում, անցկացրեց դաստակերտի վրա՝ մինչև Ջրվեժ կոչվող լեռնակողմը[23]:*

*Հայոց սպարապետ Վահանը, նրա հետ գտնվող հայ մյուս նախարարները և հայոց ռամիկ այրուձին պարսից զորքերի այս բազմությունը տեսնելով ու դիտելով շրջակա բոլոր դաշտերը, որ ծովացել էին պարսից զորքերով, թեպետև գիտեին իրենց փոքրաքանակությունը, որով անհնար էր դիմակայել, սակայն շատ էլ չզարհուրեցին, որ շտապեին փախչել, այլ որքան իրենց զորքը բավականացրեց՝ բաժանելով մեկ-մեկ կամ երկու-երկու նախարարների վրա՝ անցան հարձակման: Եվ քաջասրտորեն ճեղքելով պարսից զորքի մի թևը, բազում ընտիր տղամարդկանց դիաթավալ գետին տապալեցին ու իրենց երիվարների սանձերը բաց թողնելով՝ հեռացան քաջաբար: Պարզ է, որ հզոր տղամարդու քաջաբար փախչելը ևս սաստիկ ահ ու երկյուղ է գցում թշնամու սիրտը՝ զգուշացնելով մյուս անգամ բերելիք պատուհասի մասին:*

***Գլ. ՀԹ.*** *Հայոց զորքերը ցրվեցին և սփռվեցին այս ու այնտեղ: Իսկ հայոց զորավար Վահան Մամիկոնյանն ինքը և նրա հետ եղած հայոց նախարարները՝ մտածելով առժամանակ հանգստանալ որևէ տեղ, գնացին Խաղտյաց գավառի ամուր տեղերը, որ ոգի առնեն մնան հույսով: Հետապնդելով՝ նրանց հետևից ճեպով շարժվեց անհանգիստ Հա-*

*զարվուխտն իր ամբողջ զորքն առած: Ճանապարհին հայոց բազում ամրոցների վրա հարձակվեց, քանդեց, ավերեց, անհամար մարդիկ կոտորելով՝ արյան հեղեղներ հանեց: Գոռոզամտությունից փքված՝ հնար էր փնտրում կա՛մ բռնել, ձերբակալել քաջ Վահան Մամիկոնյանին, կա՛մ էլ պատերազմում սպանել և նոր միայն հանգստանալ:*

*Հայոց զորավար Վահան Մամիկոնյանին ու նրա հետ գտնվող նախարարներին չգտնելով, Հազարավուխտը Ոքաղից իջավ Բասյան գավառը և բանակեց Դու կոչված գյուղի մոտ, Աղբերականց կամ Արծաթաղբերք դաշտում էր գտնվում: Այնտեղ մի օր մնաց, և արքունիքից դեսպան եկավ հրովարտակով, որի մեջ Պերոզ թագավորը նրան գրով տեղեկացնում էր, թե ամբողջ արյաց ուժով դիմում է հեփթաղների[27] վրա և նրան հրամայում է գնալ Վիրք, վրաց թագավոր Վախթանգին կամ բռնել, կամ սպանել, իսկ Միհրան տոհմից Շապուհին իր զորքով մարզպան թողնել Հայոց աշխարհում:*

***Գլ. ՁԱ.*** *Հազարավուխտի Վիրք գնալուց հետո պարսից Շապուհ զորավարը մնաց Ոքաղում և ջանում էր կատարել Հազարավուխտի հրամանը՝ փնտրում էր Վահան Մամիկոնյանին, որպեսզի նրան անպատրաստ գտնի և սպանի: Բայց ոչինչ չէր հաջողվում, որովհետև Վերնայինը նրան ամրությամբ էր շրջապատել և պահում էր: Բայց Վահան Մամիկոնյանն իր զորքով հանգիստ չէր տալիս պարսից զորականներին. ամեն օր, գիշեր մինչև լույս ներքևից նետաձգություն էին անում, երբեմն հենց [հավատուրաց] հայերին էին նետահարում ու սպանում, երբեմն էլ տագնապից պարսիկներն էին իրենք իրար վրա կուտակվում, խեղդվելով կոտորվում: Եվ հայոց զորավար Վահան Մամիկոնյանն իր հետ եղած մարդկանցով գնաց, բանակեց մոտիկ մի գյուղում, որ Մամիկոնյանների իշխանությանն էր պատկանում և կոչվում էր Ծաղիկ: Կամենում էր անցնել սահմանակից Հաշտենից գավառը՝ այնտեղից օգնություն խնդրելու համար:*

*Հայտնեցին պարսից զորավար Շապուհին, թե ահավասիկ Վահան Մամիկոնյանը բանակել է մի գյուղում և իր հետ ունի սակավաթիվ մարդիկ: Առավոտյան շատ կանուխ պարսից զորագլուխ Շապուհն իր հետ եղած ամբողջ զորական բազմությամբ հանկարծակի հարձակվեց հայոց զորքի վրա: Եվ հայոց գունդը, որ միշտազգույշ էր, որովհետև հայոց զորավար Վահան Մամիկոնյանը նրան միշտ կազմ ու պատրաստ էր պահում, այդպես պատրաստ ու անվնաս էլ հեռացավ այնտեղից: Սակայն պարսից զորագնդերն ուրիշ ոչ ոքի և ոչ մի բանի մասին չէին մտածում, շարժվեցին հայոց զորավար Վահանի ետևից, որովհետև ասում էին. «Եթե միայն նրա վերջը տալու հնարը գտնենք,*

*մեր բոլոր գործերն ավարտված կլինեն և վե՛րջ»: Հայոց զորավար Վահան Մամիկոնյանը գնում էր դեպի Կարնո ծովի[25] արևելյան կողմը, իսկ պարսից զորավարների գնդերը գնում էին նրա ետևից՝ առանց հասնելու: Մամիկոնյան տոհմից Մուշեղը և Շիրակի տեր Ներսեհ Կամսարականը ծովի հյուսիսային կողմում, ժամանակի սղության պատճառով, վրիպել էին հայոց զորավար Վահան Մամիկոնյանից և քիչ մարդկանց հետ գնում էին խռովքի մեջ՝ մոտենալով Կարնո գավառի մի գյուղի, որի անունն էր Արծաթի, և հասնելով մի հեղեղատի, որ գյուղի մոտ էր, կամեցան մի քիչ հանգստանալ հեղեղատի եզրին, որի շրջակայքի արտերում հնձվորներ էին աշխատում: Երբ պարսիկները տեսան, որ չեն հասնում նրանց, որոշեցին այն տեղերի մշակներից վրեժ հանել, ասացին՝ «Ինչո՞ւ արքայից արքայի բոլոր ծառաներին թույլ եք տալիս շրջելու ձեր աշխարհում»:*

*Եվ Խուրսը, որ Արշամունյաց գավառի Շիրմաց գյուղից էր և Շիրակի տեր Կամսարականի դայակորդին, տեսավ, թե ինչպես պարսից զորքից մի զորական ցանկանում է սպանել կարնացի մշակներից մեկին, իսկ մշակը, սպանողից խույս տալով, խրձադեզի շուրջն էր պտտվում: Այս տեսնելով՝ Կամսարական Ներսեհի դայակորդի Խուրսը, գայրացած սեպուհ Մուշեղ Մամիկոնյանի ու Ներսեհ Կամսարականի վրա, աներկյուղ ասաց. «Զգիտե՞ք, որ եթե այս աշխարհական մարդը մահ գտնի այն պարսկի ձեռքով, ապա վրեժխնդիր Աստծո առաջ մե՛նք պիտի լինենք պատասխանատու»: Եվ Խուրսը նիզակով հարձակվեց պարսիկի վրա, այնտեղ էլ սպանեց ու կարնացուն փրկեց վերահաս մահից: Իսկ սեպուհ Մուշեղ Մամիկոնյանն ու Շիրակի տեր Ներսեհ Կամսարականը՝ գրգռված Խուրսի խոսքերից և դատելով նույն այդ Խուրսի գործից, որ կատարեց քաջաբար, տեսնելով նաև իրենց հետապնդողներին, որոնք այնքան էլ շատ չէին, իրենց հետ եղած քիչ մարդկանցով հարձակվեցին պարսիկների վրա, Աստծո օգնականությամբ զորացած, թշնամիներից շատերի արյունը տեղում թափեցին, մյուսներին էլ կրնկի վրա դարձնելով՝ ամոթալից փախուստի մատնեցին, և այնտեղ մեռած մարդկանց թիվն էր յոթանասուն երկու: Իսկ հայոց զորավար Վահան Մամիկոնյանը, լսելով այդպիսի աջողակ գործի մասին, փառք տվեց Աստծուն, որ, առանց իրեն էլ, թուլացնելով խորտակում էր թշնամու զորությունը: Եվ ինքը գնաց դեպի Հաշտենից գավառը՝ նախապես առաջադրած խնդրի համար, հասավ Արշամունյաց գավառը և բանակ դրեց Երեզ կոչված գյուղում՝ կամենալով այնտեղ հանգիստ առնել երկու օր:*

***Գլ. ՁԲ.** Սյունյաց զորավար Գդիհոնն շտապեցնում էր պարսից*

*գնդի զորագլուխ Շապուհին, ասելով «Վահան Մամիկոնյանի քաջության վարձը դու ե՛ս տեսար, ամբողջ Արյաց աշխարհն է՛լ: Իսկ ես այդ մարդու գործն ու արածները չեմ կարողանում հասկանալ: Քանզի եթե Դվինում ամբողջ զորքը նրա հետ միաբանած լիներ, ապա նա այնտեղ էլ մեզ ցույց կտար իր խիզախությունը: Բայց արքայից արքայի թագն ու Արյաց փառքը մեզ հաջողություն բերեցին, ու նրա գործը չուռ եկավ այնպես, ինչպես տեսանք»: ... Եվ բոլոր այն խոսքերը լսելով, պարսից զորագլուխ Շապուհը հանգիստ չէր տալիս ո՛չ իրեն, ո՛չ իր հետ եղած զորքին, այլ փութով ու գայրացած գնում էր այն մարդու (Վահանի) ետևից:*

***Գլ. ԶԳ.*** *Հայոց զորավար Վահան Մամիկոնյանի զորքերը ցանկանում էին մի փոքր հանգստանալ, երբ պարսից զորագլուխ Շապուհը հանկարծահաս հարձակվեց նրանց վրա: Իսկ Վահան Մամիկոնյանը, ուխտապահ ու քաջ սակավ մարդկանցով, խիզախորեն հարձակվեց ու մխրճվեց պարսից ամբողջ բանակի մեջ: Եվ ինչպես ինքը, այնպես էլ իր հետ եղած մարդիկ պարսից զորքերից բազում հզոր մարդկանց կոտորեցին: Նիզակի զարկով թևատակից ծանր վիրավորեցին Սյունյաց հպարտ իշխան Գդիհոնին, և նրա զրահի ահռելի ամրությունը, որի վրա անօրենն այնպես հույսեր էր դնում պարծենալով, պատռվել էր վերից վար, և նիզակատեգը թափով անցել էր լյարդի միջով: Եվ նա դառնակսկիծ ու չարալլուկ հեծկլտոցներ հանելով մի քանի օրից հոգին տվեց, սատկեց առանց խոստովանության:*

***Գլ. ԶԵ.*** *[Իսկ պարսից զորավար] Շապուհը նահանջեց դեպի Բասենի գավառը, եկավ Ալվար կոչված գյուղը: Եվ մինչդեռ հայոց զորավար Վահան Մամիկոնյանի երկյուղից տարակուսանքներն ու ծանր մտքերը տանջում էին նրան, հանկարծ Պարսկաստանից դեսպան եկավ՝ բերելով չար գույժ և անուրախ չատ նամակներ: Նամակներն ստանալով և իմանալով վրա հասած այն ծանր ու մեծ չարիքները, նամակների մեջ նկարագրված այն ահավոր պարտությունն Արյաց աշխարհի [և Պերոզի մահը]*·[26] *Շապուհն անզգայության և տրտմության մեջ ընկղմված սարսափում էր:*

***Գլ. ԶԶ.*** *... Եվ Միհրանյան Շապուհն ու դեսպանը պարսից զորքին հրամայեցին օրեցօր, ըստ հնարավորին շտապ գնալ հասնել Պարսից աշխարհը: Իսկ հայոց զորավար Վահան Մամիկոնյանն էլ լսելով այս բոլորի մասին հայոց քաջախորհուրդ ու աննենգ ուխտապահ նախարարների հետ միասին եկավ, հասավ Վաղարշապատ քաղաքը: Սովորական ուխտն ու պատարագները կատարեց Կաթողիկե Սուրբ եկեղեցում: Եվ հայոց քաջ զորավար Վահան Մամիկոնյանը մեծապայ-*

*ծառ չքեղությամբ հիմնովին նորոգեց իր նախնիների կառուցած ու այժմ հնացած այդ եկեղեցին: Այնտեղից էլ հեռանալով՝ Վահան Մամիկոնյանը մտավ Դվին ոստանը:*

***Գլ. ՁԷ.*** *Վրաց աշխարհում լսելով Պերոզի, սպանվելու և պարսից անթիվ կոտորածի մասին, Հազարավուխտն ընկավ զարհուրելի վարանումի մեջ և չտապեց գնալ-հասնել Պարսից երկիրը: Արքունիք հասավ, թե չէ, հավաքվեցին Արյաց ավագանու մնացորդները: Իրենց մեջ խորհուրդ արին, թե ո՛ւմ կարող են թագավորության արժանի համարել և այս առթիվ շատ օրեր խորհելով՝ միաբանությամբ կանգ առան Վաղարշի վրա իբրև բարերար ու հեզ մարդու, որը եղբայրն էր Պերոզ թագավորի: Եվ նրան բազմեցրին պարսից թագավորության գահին:*

***Գլ. ՁԸ.*** *Այնուհետև Վաղարշի թագավորության երկրորդ տարում, խորհրդակցելով և միաբանելով ավագանու հետ, Հազարավուխտը թագավորի առաջ խոսեց, ասաց. «Ինչպես դուք էլ գիտեք, քանի որ ձեր եղբայր արքայից արքա Պերոզը բուռն, անձնակամ ու չմահավան մարդ էր, նրա արհամարհոտ կամակորության պատճառով շատերը փախան մեր թագավորությունից՝ շատ ու շատ վնասներ հասցնելով Արյաց աշխարհին նախ և առաջ՝ Հայոց մեծ աշխարհը, որ այսօր էլ ձեր հպատակությունից դուրս է մնում: Եվ այն մարդուն[27], որն այդ աշխարհը հանեց ձեզանից, Պերոզն էր, որ, առանց ճանաչելու նրա քաջությունն ու պիտանիությունը, կորցնելով հեռացրեց Արյաց ծառայությունից, և մենք կորցրինք այդ լավ մարդուն այն աշխարհի հետ: Եվ թե այն մարդուց որքան վնաս ու կոտորած եկավ Արյաց մեր աշխարհին, ամենքը գիտեն: Թվում է, թե դուք ևս լսել եք ու տեղյակ եք: Բայց Շապուհ-Միհրանը, որին դուք կարգեցիք, բոլորից շատ է առել նրա քաջության համն ու խրատները: Թե որ հարցնեք և կամենաք լսել, այդքանն ինքը ձեզ կպատմի»:*

*Վաղարշ թագավորը Միհրան-Շապուհին հարցրեց Հայքի վիճակի մասին. «Ի՞նչ գործ կարողացար կատարել Հայոց աշխարհում: Այդ Վահանն ի՞նչ միտք և ուժ ունի, ինչպե՞ս այսքան տարի կարողացավ դիմադրել արիներիս»: Միհրանը պատասխանելով ասաց. «... Թեպետ և ձեր առաջ ասած իմ խոսքերը կարող են հանդգնություն թվալ, սակայն այս պահին իմ մտքերի մասին կհամարձակվեմ ասել, որ Հայոց աշխարհի մեծությունն ու օգտակարությունը դուք էլ քաջ գիտեք: Սակայն Վահանը և մնացած ազատները, որ նրա հետ են, եթե այսօր խաղաղությամբ ձեր ծառայության տակ լինեին, դա կհամարեի մեծ հաջողություն և կարևոր մխիթարություն մեզ հասած*

*տրտմության դիմաց: Որովհետև, երբ Հայքն իր այնպիսի ազատներով մերն էր, Վիրքն ու Աղվանքը բնավ չէին համարձակվում իրենց մտքները ծռել և ուրիշ որևէ բան խորհել»:*

*Եվ Թագավոր Վաղարշն այսպիսի օրինակելի խոսքեր լսեց Միհրանից, Հազարավուխտից ու Արյաց ամբողջ ավագանուց: Հետո նրանք բոլորն էլ գովեցին Միհրանի ասածը, թե արդարև այդպես է, ինչպես որ քաջ իմաստությամբ նա ասաց ճշմարտությունը: Ապա վաղվաղակի ու չտապ Նիխոր Վշնասպդատին՝ այդ հեզ, խելոք ու աշխարհաշեն մարդուն, շատ ընտիր մարդկանց հետ, ուղարկեցին Հայք: Թագավորն ինքը, առավելապես Հազարավուխտի և արքունիքի ավագանու հոգաբարձությամբ, նրան պատվիրեց, թե «Գնա Հայք, և ինչ օրինակով էլ լինի, ամենայն քաղցրությամբ ու սիրով, ըստ Վահանի ու նրա ընկերակիցների կամքի, նվաճիր, ծառայության տակ դիր: Սակայն զգույշ եղիր, որ նախ քո շուրջը հավաքես Հայքին մոտ գտնվող Ատրպատականի այրուձին, ինչպես նաև Հեր ու Զարավանդ գավառի հեծելազորը: Գուցե դու մարդ ուղարկես Վահանի մոտ, և նա պատրվակներով քեզ հետ քաղցր խոսի, քեզ խաբի ու որևէ վնաս հասցնի: Որովհետև ինքը քաջ մարդ է և խորամիտ. դրա համար էլ մինչև այժմ նա ու իր հետ եղածներն այնքան մեծ գործերը կատարել են ոչ միայն քաջությամբ: Իսկ դու լավ պատրաստվիր... Սակայն թվում է, թե հիմա Վահանն այդպիսի բան չի մտածում: Քանզի այն գործը, որ Վահանն ու իր գործակիցները համարձակվեցին կատարել, Պերոզի մարդ չճանաչելու պատճառով եղավ: Իր հպարտ ու անձնահաճ բնավորությամբ այդ արեց, և Վահանն ու նրա հետ միաբանած մարդիկ էլ չկարողացան տանել արհամարհանքները, իրենց անձերը մահու տալով՝ հարկադրվեցին այդպիսի գործ կատարել»: Եվ այս բոլոր խոսքերն ասելով՝ Արյաց տեր Վաղարշն ու ամենայն ավագանին՝ Նիխոր Վշնասպդատի հետ միասին, նրան ճանապարհ դրին դեպի Հայք:*

***Գլ. ՁԹ***. *Հայոց աշխարհը գնալով՝ Նիխորը չհամարձակվեց խորանալ Հայքի գավառները, այլ մնաց Հեր կոչված գավառի մի գյուղում, որի անունն է Նվարսակ: Նա Վահան Մամիկոնյանի մոտ դեսպաններ ուղարկեց, որոնց միջոցով հայտնեց իր Հայք գալը և թե «Հրովարտակ ունեմ Վաղարշ Թագավորից՝ ուղղված ձեզ, որպեսզի խաղաղությամբ նվաճեմ ձեզ և Արյաց բոլոր ավագներից էլ պատգամ ունեմ ձեզ հաղորդելու: Արդ, եկե՛ք, լսեցե՛ք և, ինչը ձեզ հաճելի ու բարի կհամարեք, այն էլ կընտրեք»:*

***Գլ. ՂԱ.*** *... Այնուհետև հայոց զորավար Վահան Մամիկոնյանը*

*ճանապարհ ընկավ ուխտապահ բոլոր նախարարների և կազմ ու պատրաստ իր զորքերի հետ միասին: Եվ Մամիկոնյան Վահանը գալով Արտազ գավառի Եղինդ կոչված գյուղը, հանգիստ առավ՝ իր հետ գնացած բոլոր զորքերով հանդերձ: Մարդ ուղարկեց Նիխորի մոտ ու իր գալուստի մասին տեղեկացրեց: Եվ Վահան Մամիկոնյանը Նիխորին ասում էր. «Արդ, եթե կարծում ես, որ ես պիտի գամ ու տեսնեմ քեզ, ապա ինձ ուղարկիր պարսից ավագներ ականավոր տոհմերից, որպեսզի գան այստեղ, մնան իմ ազատների մոտ, մինչև ես գամ, քեզ տեսնեմ, և ես ու դու միմյանց հետ խոսելով լսենք իրար ու կատարենք ինչ որ արժան կհամարենք»:*

*Նիխորը, լսելով Վահան Մամիկոնյանի գալու և առաջադրած պահանջի մասին, չտապով Շիրակի տեր Ներսեհ Կամսարականին տվեց տանելու Ատրպատականի չահապ*[28] *Բազեին, Հայոց հազարապետ Վեհ-Վեհնամին, Միհրանի եղբայր Ներսչապուհին և ուրիշ հինգ պարսիկ ավագների: Վահան Մամիկոնյանն էլ Նիխորի ուղարկած ավագներին ընդունեց բարեկամաբար և այն օրը խնդությամբ միասին անցկացնելով, առավոտյան այն ութին էլ թողնելով իր հավատարիմ մարդկանց մոտ, որոնց կարգադրեց նրանց պատվել արժանավորապես և զգուշանալ, իսկ ինքը զորքով, կազմ ու պատրաստ գնաց Նիխորի մոտ: Մոտենալով այն գյուղին, ուր Նիխորն էր, իր հետ եղած զորքին հրամայեց դասավորվել ըստ պատերազմական կարգի: Եվ նրանք Վահան Մամիկոնյանի հրամանը լսելուն պես՝ ցույց տվին անձնակազմի լիակատար պատրաստությունը: Վահան Մամիկոնյանը կարգադրեց հնչեցնել պատերազմական փողերը: Եվ փողերի ձայների սաստկությունից երկիրը թնդաց, որից զարհուրած՝ Նիխորի մարդիկ կարծեցին, թե Վահան Մամիկոնյանը խաբեությամբ եկել է իրենց ջախջախելու և ոչ թե սիրով ու խաղաղությամբ դաշն կնքելու:*

***Գլ. ՂԱ.** ... Ապա Վահան Մամիկոնյանն ինքն իսկ եկավ Նիխորի մոտ: Եվ Նիխորն էլ տեսնելով Վահան Մամիկոնյանին ու նրա հետ եկած մյուս ուխտակից նախարարներին, ցնծալից ուրախությամբ ողջունում է նրանց: Հաղորդեց նաև Արյաց տեր Վաղարշի ու ամբողջ Ավագանու ողջույնները:*

***Գլ. ՂԳ.** ... Իսկ Վահան Մամիկոնյանն սկսեց խոսել Նիխորի հետ և ասաց. «Ես և ինձ հետ եղած ուխտապահ նախարարները, ինչ որ քեզանից խնդրեցինք պատգամավորների միջոցով և գրելով, որ և երեկ ու այսօր խոսեցի դեմ-հանդիման, և դու Արյաց տիրոջ հրամանով և ամբողջ արքունիքի ավագանու հրամանով, գրով ու կնիքով խոստացար տալ մեզ՝ քրիստոնեական հավատի հաստատություն,*

*Հայոց աշխարհից մոգերի ու ատրուշանների վերացում, մեր եկեղեցու պայծառացումն ու պաշտամունքը՝ ինչպես մենք կկամենանք: Առանց սրանց անհնար կլինի, որ մենք ապրենք և ձեզ ծառայենք: Սրանք, որ կարևոր են մեզ համար և անհրաժեշտաբար պետքական, Թագավորի կնիքով հաստատիր մեզ համար, նաև՝ մնացածները, որ գրված են նամակի մեջ, դու բոլորը գիտես, և պետք չէ, որ քո առաջ շատախոսենք: Իսկ գահը, պատիվն ու շքեղությունն էլ, նայելով յուրաքանչյուրի վաստակին, տվեք առանց կասկածելու և մի՛ զրկեցեք»:*

***Գլ. ՂԴ.*** *Վահան Մամիկոնյանն ասաց այս բոլորը, և Նիխորն էլ ամեն ինչ սիրով ունկնդրեց ու հաճույքով հանձն առավ: Ապա Նիխորը խնդրեց հայոց բնիկ այրուձին. «Կազմիր,– ասաց,– և շտապ ուղարկիր արքունիք, քանզի Պերոզի որդի Զարեհը, ընդդիմանալով Արյաց գործերին, զորք է կազմել իր ու իր համախոհների կորստի համար: Եվ դու փութա ուղարկել հայոց այրուձին, որպեսզի, քո արքունիք գնալուց առաջ, այն մի մեծ ծառայություն մատուցի Թագավորին ու Արյաց երկրին: Քանի որ Թագավորն ինձ ևս հրամայել է շտապ գնալ արքունիք: Եվ քանզի աստվածներն այս գործը հաջողությամբ ու բարերարությամբ ավարտեցին, որպեսզի ես ավելի վաղ գնամ այնտեղ, դա էլ հարմար է ու պատշաճ»: Նիխորն ու Վահան Մամիկոնյանը մի քանի օր միասին ուրախացան, (ապա Նիխորը) գործի պետքերի համար պատրաստվեց: Հրաժեշտ տալով միմյանց, հեռացան խաղաղությամբ: Նիխորը՝ արքունիք, Թագավորի մոտ, իսկ հայոց զորավար Վահան Մամիկոնյանը՝ Դվին:*

***Գլ. ՂԵ.*** *Մի քանի օր հետո Վահան Մամիկոնյանը շտապ հավաքեց հայոց այրուձին և, ինքն ու բոլոր ուխտակից նախարարներն էլ նրա հետ, ճանապարհ ընկան, գնացին Վաղարշ Թագավորի մոտ: Օրերի պատեհության համաձայն ճանապարհի օթևաններն անցնելով գնացին, հասան արքունիք: Եվ Թագավորն ու Արյաց ամենայն ավագանին, լսելով Վահանի գալն արքունիք, անմիջապես ու շտապ ժամ նշանակեցին, և նա ներկայացավ Թագավորին ու Արյաց ամենայն ավագանուն:*

*Եվ Վաղարշ Թագավորը սիրալիր հարցրեց նրա առողջությունից և սկսեց խոսել Վահան Մամիկոնյանի հետ: «Լիապես լսել ենք բոլորը,– ասաց,– որ խոսել եք Նիխորի հետ. ա՛յն որ պատգամավորների միջոցով էիք ասել, և ա՛յն, որ նամակով, և ա՛յն որ դեմ-հանդիման զրուցել եք նրա հետ: Նիխորն ամեն ինչ է մեզ պատմել: Քո ասած խոսքերի մեջ ոչ մի սուտ բան չկա: Ո՛չ մի բան:*

*Եվ Թագավոր Վաղարշին պատասխանելով՝ Վահան Մամիկոնյանն ամենայն բազմության առաջ ասաց. «Հայոց աշխարհից հեռաց-*

*րեք աղտեղի ու անպիտան մարդկանց. նրանց աղտեղի գործերը հայտնապես գիտեն իրենց գավառակիցները և Հայոց աշխարհի ուրիշ մարդիկ: Գիտեն, թե ինչ տեսակ մարդիկ են՝ լի ամենայն աղտեղություններով, սուտ, անպիտան, չարագործ, ծածուկ թրևող, գող, լեռներում թաքնվող, գերեզմաններ բացող, խաբեբա: Հայոց աշխարհի կրտսեր շինական մարդիկ անգամ զզվում են նրանց հետ հացի նստելուց կամ առհասարակ նրանց մոտենալուց, որպեսզի չլինի թե մեր օրենքները խախտելով աղտոտվեն: Այդպիսիները գալիս, խաբեությամբ ձեզնից ընդունում էին ձեր օրենքը, ապա ըստ իրենց ցանկության՝ ապականում կրակը և ձեզ հիմարի տեղ դնում:*

*Դրա համար էլ այսօր համարձակորեն և ամբողջ ձայնով ձեր առաջ ասում եմ. «Հայոց աշխարհից հեռացրե՛ք այդ խաբեական վաճառքը[29], որ մենք արդար չենք համարում, ոչ ոք չի պատվում իբրև Աստծու: Հայտնի է, որ հետինն առաջինին, վատերը լավին, անպիտանը պիտանիին, ստամբակ որդին հորը և չարագործ ծառան իր տիրոջը երբ կամենան ետ քաշել կամ կորստյան մատնել, անմիջապես դիմում են ձեր սուտ օրենքներին և բոլոր ու ամեն տեսակ չարիքները դրանցով են կատարում: Բայց դուք եկեք մեզանից՝ որպես ձեր հպատակներից, պահանջեցեք հարգել տերերին, պահանջեցեք գործ, վաստակ, հպատակություն, օգուտ, արդարամտություն, ապա աստվածաբար, անզրկող մտքով, յուրաքանչյուր մարդու հատուցեցեք ըստ իր վաստակի: Մեր բոլորիս խոսքն ու պահանջն այդ է: Եթե այդ պահանջը մեզ շնորհելով հաստատեք և չկամենաք մեզ հանել ձեր ծառայությունից, ապա, ինչպես թագավորների օրենքն է, գրով ու կնիքով այդ մեզ համար հաստատեցեք և մեզնից, որպես հպատակ մարդկանցից, պահանջեցեք գործ ու հպատակություն և ձեր խելոք ու ամենատես աչքերով նայեցեք մարդուն ու նրա գործին և արժանին հատուցեցեք»:*

*Վահան Մամիկոնյանն այս բոլոր խոսքերն ասաց Վաղարշ թագավորի ու դրան ամենայն ավագանու առաջ, և բոլորը բարձրաձայն գովեցին նրան ու ընդունեցին իբրև քաջի: Ամենքը զարմացած էին Մամիկոնյանի իմաստության ու նրա բերանից ելած խոսքերի շնորհառատության վրա: Քանզի ո՛չ միայն հավատացյալներին, այլև անհավատներին էլ այնպես էր թվում, թե աստվածապարգև աղբյուրից են բխում Մամիկոնյանի խոսքերը, որոնք ախորժելի քաղցրությամբ լսելի էին լինում ամենքի ականջներին:*

*Պատասխան տալով՝ Վաղարշ թագավորը Վահան Մամիկոնյանին և նրան ուխտակից հայ բոլոր նախարարներին ասաց. «Այն ամենը, որ դուք մտածել եք և իմացել, և որ մեր առաջ ասաց ձեր Վահանը, ձեզ կտրվի մեր գրով ու կնիքով: Ձեր բոլոր պահանջները ձեզ կտրվեն*

*այսօր, մինչև հավիտյան: Եվ ապստամբության գործը, որ կատարել էիք Պերոզի բռնությունից և ոչ թե ձեր կամքով, ներվում է այսօր: Եվ այս գահի վրա բազմող թագավորներից ո՛չ մեկը կամ որևէ պարսիկ մարդ, այսուհետև և հավիտյան չի համարձակվի հիշել այդ իր առանձին խոսքի մեկ կամ որևէ հայ մարդու առաջ»:*

***Գլ. ՂԶ.*** *...[Վաղարշ] Թագավորն ու Արյաց ամբողջ ավագանին Վահան Մամիկոնյանին բազմեցրին Մամիկոնյանների տերության գահին՝ տալով նրան, ըստ իր նախնյաց օրենքի նաև Հայոց երկրի սպարապետությունը: Այն ժամանակ Մամիկոնեից տեր և Հայոց սպարապետ Վահան Մամիկոնյանի հետ միաբանած հայ ուխտապահ նախարարներին ևս շնորհեցին, յուրաքանչյուրին ինչ որ պատշաճ էր ըստ իր արժանավորության: Եվ Վաղարշ Թագավորն ու ամբողջ ավագանին բոլորին ընդունեցին մեծ սիրով ու ցանկալի պատվով, ապա հրաժեշտ տալով՝ խաղաղությամբ ճանապարհեցին դեպի Հայոց աշխարհը:*

***Գլ. ՂԹ.*** *... [Քիչ ժամանակ անց] Վաղարշ Թագավորը, Արյաց արքունիքի ամբողջ ավագանու միաբանությամբ կարգադրեց հրովարտակ հղել Հայաստան՝ մարզպան կարգելու Մամիկոնեից տեր և Հայոց զորավար Վահանին: Մարզպանության հրովարտակը բերելով հանձնեցին Հայոց զորավար ու Մամիկոնեից տեր Վահանին և Աստծո հզոր աջով Հայոց աշխարհի վրա նրան մարզպան կարգելով հաստատեցին:*

*1. Հավանաբար 456 թվականին:*

*2. Պերոզը (459-484) Հազկերտ II-ի որդին էր:*

*3. Ակնարկը վերաբերում է Սպերի ոսկու հանքերին, որը գտնվում էր Վահան Մամիկոնյանի հսկողության ներքո:*

*4. Նկատի ունի Վարդան Մամիկոնյանի և հայոց մյուս ավագ նախարարների առևևույթ ուրացությունը Տիզբոնում 450 թվականին:*

*5. Խոսքը Վրաստանի թագավոր Վախթանգ Գորգասարի (446-484) մասին է:*

*6. Խոսքը Ախուրյան գետի աջ ափին վեր խոյացած Անի ամրոցի մասին է:*

*7.* **Կատիչք** *– ազգագավառ, որ տեղադրվում է Արդաբիլի շրջանում:*

*8. Սա այն Սահակ ասպետ Բագրատունին է, որ հովանավորել է Պատմահայր Մովսես Խորենացուն և եղել մեկենասը հանճարեղ «Պատմութիւն Հայոց»-ի:*

*9. Խոսքը ժամանակի Հայոց կաթողիկոս Հովհաննես Ա Մանդակունու (478-490) մասին է:*

*10. Վարազկերտ և Կուվակք գյուղերը տեղադրվում են Արաքս գետի ափին՝ Նախճավանից արևմուտք:*

*11. Ակնարկը վերաբերում է Մասիս (Արարատ) լեռանը:*

*12. Աստվածաշնչային կերպար (***Դատաւորք***, Զ, 7), Իսրայելի առաջնորդ: Փոքրաթիվ ուժերով հաղթելով հարևան ասպատակ ցեղերին՝ իր ժողովրդի համար ապահովել է երկարատև խաղաղություն:*

*13. **Դատաւորք**, Է, 7-10:*

*14. **Օրինաց**, ԼԲ, 30:*

*15. Աստվածաշնչային կերպար՝ արդարամիտ ու ճշմարտախոս, աստվածապաշտ անձնավորություն (**Հոբ**, Ա):*

*16. Իրադարձությունները տեղի են ունեցել 482 թ. գարնանը:*

*17. Թարգմանաբար՝ թիկնապահների վերակացու, այսինքն՝ զորավար:*

*18. Տե՛ս **Հռովմ.**, Ե., 5:*

*19. Վարչակի ջերմուկը տեղադրվում է Մաղկոտն գավառում:*

*20. Գավառ Գուգարք նահանգում:*

*21. Ճարմանայի դաշտի տեղադրությունը որոշակի չէ:*

*22. Նկատի ունի Ս. Հռիփսիմյաններին նվիրված սրբատեղիները:*

*23. Համապատասխանում է այժմյան Ջրվեժին՝ Երևանից ոչ հեռու:*

*24. Հեփթաղները քոչվոր ռազմատենչ ցեղեր էին, հավանաբար քուշաններին ազգակից, որ բնակվում էին Իրանից հյուսիս-արևելք:*

*25. Խոսքը Կարին քաղաքի շրջակայքում գտնվող լճի մասին է, որ գոյանում է Եփրատի աղբյուրներից:*

*26. Հեփթաղների հետ ճակատամարտը տեղի է ունեցել 484 թ. հուլիսին, որի ընթացքում էլ զոհվել է պարսից Պերոզ թագավորը:*

*27. Ակնարկում է Վահան Մամիկոնյանին:*

*28. «Շահապը» տվյալ դեպքում նշանակում է Ատրպատականի կառավարիչ:*

*29. Նկատի ունի ատրուշան-կրակարանները:*

*30. Վահան Մամիկոնյանը հայոց մարզպան է եղել 486-505 թվականներին:*

## 481-484 ԹԹ. ՀԱԿԱՊԱՐՍԿԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Ը.** Եվ պարսից Պերոզ արքայի տարիներին տեղի ունեցավ ամենայն իշխանությունների և քրիստոնեության օրենքների ու կարգերի վերացում, և իշխանների վրա քամահրանքների և հալածանքների այնպիսի տագնապալի վտանգ կախվեց, մինչև որ դեն նետեցին իրենցից ծառայության լուծը: Եվ ապստամբելով՝ Վահան Մամիկոնյանը հալածեց պարսիկներին և ուժով ու բռնի կերպով գրավեց իշխանությունը:*

*Այնժամ Պերոզ արքան նրա վրա հոների մեծ զորք ուղարկեց: Եվ խիստ սպառնալիքով հրամայեց սպանել ապստամբին ու բոլոր արուներին սրի քաշել: Սրա դեմ աճապարեց Վահան սպարապետը երեսուն հազար ընտիր սպառազեններով, դասավորվեցին գունդ առ գունդ և ճակատ առ ճակատ և Գերանի դաշտում[1] փողի ձայնով փութով հարձակվեցին միմյանց վրա:*

*Այնտեղ օգնության հասավ Աստծո Որդին, հողմը սաստկանալով՝ պարսից զորքերի շուրջը փոշու մրրիկ հեղեց. միջօրեի ժամին նրանց պատեց իբրև մութ խավար: Երկու կողմից <էլ> սաստիկ կոտորվեցին, և ընկած դիակները ջոկել չէր լինում՝ ո՛չ պարսիկ և ո՛չ էլ հայ զինվորներինը: Սակայն հայոց զորքերը զորանալով՝ կոտորածով հաղթեցին այնտեղ պարսից զորքին, իսկ մնացածներին փախստյան մատնելով՝ հալածեցին և վերադարձան մեծ հաղթությամբ:*

*Այս Վահանը ժողովեց Հայոց աշխարհի հարկերը և շինեց մեծամեծ եկեղեցիները, որոնք ավերել էին պարսիկները Վաղարշապատ քաղաքում, Դվինում, Մզրայքում*[2] *և Հայոց աշխարհի բազում վայրերում: Եվ շենացրեց երկիրը՝ վերստին նորոգելով:*

*Իսկ պարսից Պերոզ արքան, թեպետև կրկին կամեցավ զորքեր գումարել Հայոց աշխարհի վրա, <սակայն> ժամանակ չգտավ, քանի որ քուշանների կողմերից և այն մարզից թշնամիների մասին լուրերը տագնապեցրին նրան, քանզի ինքն իսկ՝ քուշանների արքան, մեծ զորքով շարժվել գալիս էր նրա վրա:*

*Եվ նա, գումարելով իր զորքերը, մեծ փութով գնաց նրան ընդդեմ: Ասաց. «Գնամ նախ և առաջ քշեմ նրան, ապա մի ազատ պահի դարձյալ կգնամ Հայաստան, ու իմ սուրը չի խնայի նրանց՝ և՛ տղամարդկանց, և՛ կանանց»:*

*Եվ ինքն, առաջ շարժվելով, փութով հասավ թշնամու դեմ արևելքում, և սաստիկ պատերազմ եղավ. <քուշանները> կոտորեցին և ջախջախեցին պարսից զորքերի բազմությանը, մինչև որ չմնաց նրանցից փրկված և փախստական: Մեռավ պատերազմում նաև Պերոզ արքան յոթ որդիներով հանդերձ:*

*Եվ ապա այնժամ Պարսից աշխարհի վրա թագավորեց նրա որդի Կավատը*[3]*: Եվ քանի որ բեկված էր իր զորքերի բազմության զորությունը, չկամեցավ որևէ մեկի դեմ պատերազմել, այլ բոլոր կողմերում խաղաղություն հաստատեց, հայերի հետ ևս հաշտություն կնքեց, կանչեց Վահանին դուռը և մեծարեց նրան մեծ պատվով: Եվ նրան տվեց Հայոց աշխարհի մարզպանությունն ու Մամիկոնյանների իշխանությունը, հավատարմության բազմաթիվ երդումներ առավ և սիրով ուղարկեց իր երկիրը:*

*1. Գերանի դաշտի տեղագրությունն անորոշ է:*

*2. Մզրայքը տեղադրվում է Ալաշկերտի հովտում:*

*3. Իրադարձությունները շփոթված են: Պերոզից հետո գահ է բարձրացել նրա եղբայր Վաղարշը, որն էլ խաղաղություն է հաստատել Վահան Մամիկոնյանի հետ և նրան նշանակել Հայոց մարզպան: Իսկ Կավատ I-ը գահակալել է Վաղարշից հետո՝ 488–496, 498–531 թվականներին:*

## ՊՐՈԿՈՊԻՈՍ ԿԵՍԱՐԱՑԻՆ ՀԱՅԵՐԻ ՀԱԿԱԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### *Գիրք II*

*3. Այս միջոցին[1] մի ուրիշ բան էլ պատահեց: Ֆարանգիոնը[2] հռոմայեցիներին հանձնող Սիմեոնը[3], պատերազմի թեժ պահին համոզում է Հուստինիանոս կայսրին[4]՝ հայ մարդկանց պատկանող գյուղերն իրեն նվիրել: Նա տիրանում է այդ գյուղերին, բայց հետո զոհ դառնում դրանց նախկին տերերի դավադրությանը: Ոճրագործության կազմակերպիչները փախչում են Պարսից երկիրը: Նրանք երկու եղբայրներ էին՝ [հայ] Պերոզի[5] որդիները: Կայսրն իմանալով այդ, գյուղերը տալիս է Սիմեոնի եղբորորդի Համազասպին և նրան նշանակում Հայոց իշխան: Որոշ ժամանակ անց Հուստինիանոս կայսեր մտերիմ մարդկանցից մեկը՝ Ակակիոս անունով, Համազասպին զրպարտում է, մեղադրելով Հայաստանում չարագործություններ կատարելու և Թեոդոսուպոլիսն ու այլ քաղաքներ պարսիկներին հանձնելու մտադրության մեջ: Դրանից հետո Ակակիոսը կայսեր համաձայնությամբ նենգորեն սպանում է Համազասպին և կայսրից ստանում Հայոց իշխանությունը: Նա ի բնե նենգ լինելով՝ հնարավորություն ստացավ կատարել ինչ որ իր հոգին էր ցանկանում, և իր հպատակների համար ամենադաժան մարդը դարձավ. նա առանց որևէ պատճառի հափշտակում էր մարդկանց ունեցվածքը: Նա հայերի վրա չորս կենտինար հարկ դրեց, մի բան, որ երբեք չէր եղել: Բայց հայերը, ի վիճակի չլինելով տանել Ակակիոսին, համաձայնության եկան ու սպանեցին նրան և փախչելով ապաստան գտան Ֆարանգիոնում:*

*Այդ պատճառով Բյուզանդիոնից կայսրը նրանց դեմ ուղարկեց Սիտտասին[6]. Հռոմայեցիների և պարսիկների միջև հաշտության պայմաններում Սիտտասը [Բյուզանդիոնում] էր ապրում: Երբ նա Հայաստան եկավ, սկզբում ցանկություն ցույց չէր տալիս պատերազմելու [հայերի դեմ], այլ ուզում էր հորդորել նրանց վերադառնալու իրենց երկիրը, խոստանալով համոզել կայսրին վերացնելու նոր հարկի գանձումը: Սակայն, որովհետև կայսրը, դրդված Ադոլիոսի՝ Ակակիոսի որդու ոտնաձգություններից, շատ էր վատաբանում և պախարակում Սիտտասին՝ դանդաղկոտության համար, վերջինս անմիջապես պատրաստվում էր ընդհարվելու [հայերի հետ]: Նախ և առաջ փորձեց*

*մեծ գումար խոստանալով կաշառել [Հայերից] ոմանց և իրեն դաշնակից դարձնել, որպեսզի կարողանա ավելի հեշտությամբ հաղթել մնացածներին։ Նրան էր ուզում հարել մեծ և բազմամարդ Ասպետյանների տոհմը[7], որ մարդ ուղարկեց Սիտտասի մոտ, խնդրելով գրավոր հավաստիացում, որ եթե իրենք, Ասպետյանները, այդ գործի ժամանակ լքեն իրենց ցեղակիցներին և անցնեն հռոմայեցիների կողմը, ոչ մի պատիժ չեն կրելու վերջիններիս կողմից և պիտի շարունակեն տիրել իրենց ունեցվածքին։ [Սիտտասն] ուրախությամբ այդ մասին գրեց մի փոքր գրություն, տվեց նրանց պահանջած հավաստիացումը և կնքելով գրությունը, ուղարկեց նրանց։ Նա համոզված էր, որ [Ասպետյանների] օգնությամբ կկարողանա առանց պատերազմի հաղթել, և ամբողջ զորքով շարժվեց Օյնոքալակոն[8] վայրի վրա, որտեղ ճամբարել էին հայերը։ Սակայն գրությունն ստացողները, պատահմամբ ուրիշ ճանապարհով գնացին և չկարողացան հանդիպել Ասպետյաններին։ Այդ միջոցին հռոմեական բանակի մի զորամաս հանդիպեց [Ասպետյանների] մի փոքր խմբի և ձեռք բերված համաձայնությանն անտեղյակ, կոտորեց նրանց որպես թշնամիների։ Սիտտասն էլ մի քարայրում գերի վերցրեց նրանց երեխաներին ու կանանց և սպանեց. կամ այն պատճառով, որ չիմացավ թե ովքեր են նրանք, կամ էլ որովհետև զայրացել էր Ասպետյանների դեմ, որ հակառակ համաձայնության, չէին անցնում իր կողմը։*

*[Ասպետյանները], զայրացած, մյուս բոլոր [հայերի] հետ միասին պատրաստվեցին մարտի։ Որովհետև երկու կողմերն էլ գտնվում էին դժվարանցանելի և զառիթափ տեղանքում, իրար դեմ չէին կռվում մի տեղում կենտրոնացած, այլ ցրված՝ լեռների ստորոտներում և ձորերում։ Այնպես պատահեց, որ հայերի մի փոքրաթիվ խումբ և Սիտտասն իր զորքի մի փոքր մասով հայտնվեցին իրար շատ մոտիկ։ Նրանց բաժանում էր մի ձոր։ Երկու հակառակորդներն էլ հեծյալ էին։ Սիտտասը փոքրաթիվ մարդկանցով անցավ ձորը և շարժվեց հակառակորդի վրա, իսկ հայերը նահանջելով կանգ առան։ Սիտտասն այլևս չէր հալածում նրանց և կանգ էր առել։ Հանկարծ հռոմայեցի զինվորներից մեկը, ծագումով էրուլոս, որը հալածում էր թշնամիներին, զայրացած ետ վերադարձավ։ Սիտտասն այդ ժամանակ գետնի մեջ էր խրել իր նիզակը. էրուլոսի ձին մեծ թափով ընկավ նիզակի վրա և ջարդեց այն. դա անչափ տխրեցրեց զորավարին։ Մի հայ ճանաչեց նրան և հայտնեց մյուսներին, թե սա հենց ինքը՝ Սիտտասն է։ Նրա գլխին սաղավարտ չկար, իր զորքն էլ փոքրաթիվ էր, և դա հնարավորություն տվեց, որ թշնամին իրեն ճանաչի։ Սիտտասը, երբ լսեց*

*հայի ասածը, քաշեց Թուրը (իր նիզակը, ինչպես ասացինք, ջարդված ընկած էր գետնին) և որոշեց անմիջապես անցնել ձորը: Թշնամիները մեծ արագությամբ շարժվեցին նրա վրա և մեկը ձորում հասնելով նրան, Թրի շեղ հարվածով վերք հասցրեց գլխին. ու թեև գանգի կաշին լրիվ տարավ, բայց մետաղը չդիպավ ոսկորին: Սիտտասը նախկինից ավելի թափով առաջ նետվեց, սակայն Հովհաննեսի որդի Արտավան Արշակունին[9] թիկունքից հարձակվելով՝ հարվածեց նիզակով ու սպանեց նրան: Ահա այսպես անփառունակ վախճան ունեցավ Սիտտասը, վախճան, որին արժանի չէր առաքինի և թշնամիների հանդեպ [քաջություն] ցուցաբերած մի մարդ: Նա շատ գեղեցիկ էր, քաջ կռվող, լավագույն զորավար, ոչնչով չզիջող իր ժամանակի [զորավարներին]: Ոմանք պատմում են, որ Սիտտասին սպանողը ոչ թե Արտավանն էր, այլ Սոլոմոնը՝ հայերի մեջ բոլորովին անհայտ մի մարդ:*

*Սիտտասի վախճանվելուց հետո կայսրը Բուզեսին հրամայեց արշավել հայերի վրա: Վերջինս, երբ տեղ հասավ, [հայերին] նամակ ուղարկեց, որով խոստանում էր նրանց հաշտեցնել կայսեր հետ և այդ կապակցությամբ առաջարկում էր, որ մեծամեծներից մարդիկ գան իր մոտ բանակցություններ վարելու: Սակայն [հայերը] Բուզեսին հավատալու ո՛չ հիմքեր ունեին, ո՛չ էլ նրա խոսքերին ականջ դնելու ցանկություն: Բուզեսը մի մոտիկ ընկեր ուներ՝ [ծագումով] Արշակունի, անունը Հովհաննես, որը Արտավանի հայրն էր: Վերջինս, հույս դնելով Բուզեսի հետ ունեցած բարեկամության վրա, իր փեսա Վասակի[10] և մի քանիսի հետ եկավ նրա մոտ: Նրանք հասան և ապաստանեցին մի վայրում, որտեղ հաջորդ օրը պետք է հանդիպեին Բուզեսի հետ, բայց զգացին, որ հռոմեական զորքերը շրջապատել են իրենց: Հովհաննեսի փեսա Վասակը շատ էր աղաչում Հովհաննեսին փախուստի դիմել, բայց երբ չհաջողվեց համոզել, մենակ թողնելով նրան, հռոմայեցիներից գաղտնի, մնացածների հետ նույն ճանապարհով վերադարձավ: Այսպիսով Բուզեսը միայն Հովհաննեսին գտավ և սպանեց, որից հետո հայերը հռոմայեցիների հետ համաձայնության գալու բոլոր հույսերը կտրեցին. ի վիճակի չլինելով պատերազմում պարտության մատնել կայսրին, գործունյա Վասակի գլխավորությամբ նրանք գնացին պարսից արքայի մոտ:*

*1. Այս իրադարձությունները տեղի են ունեցել 539 թվականին:*

*2. Ֆարանգիոնը, որ գտնվում էր Թորթում գետի ավազանում՝ Սպերից ոչ հեռու, հայտնի էր ոսկու հանքերով: Ֆարանգիոնի ոսկու հանքերի մասին մանրամասն տե՛ս* ***Ն. Ադոնց,*** *Երկեր, հատ. Ա, Երևան, 2006, էջ 141-155:*

*3. Սիմեոնը եղել է Ֆարանգիոնի ոսկու հանքերի կառավարիչը:*

*4. Խոսքը Հուստինիանոս I կայսեր (527–565) մասին է:*

*5. Ն. Ադոնցի կարծիքով Պերոզը հավանաբար պետք է լիներ հայ Արշակունիների ընտանիքից (տե՛ս* ***Ն. Ադոնց****, Երկեր, հատ. Դ, Երևան, 2009, էջ 568):*

*6. Սիտտասը բյուզանդական հայազգի նշանավոր զորավար Ուրսիկոսի մականունն է: Նա չափազանց սերտ հարաբերություններ է ունեցել Հուստինիանոս I կայսեր հետ, որի կինը՝ Թեոդորան, Սիտտասի կնոջ՝ Կոմիտայի քույրն էր (տե՛ս* ***Н. Адонц****,* Армения в эпоху Юстиниана*, էջ 138):*

*7. Ուսումնասիրողները, ոչ առանց հիմքի, ասպետյաններին նույնացնում են Բագրատունիների հետ:*

*8. Օյնոքալակոնի տեղադրությունը հայտնի չէ:*

*9. Արտավան Արշակունին Բյուզանդիայում բավականաչափ հայտնի ռազմական ու քաղաքական գործիչ էր: Ն. Ադոնցը նրան նվիրել է հատուկ ուսումնասիրություն՝ «Արտավան Արշակունի» խորագրով (տե՛ս* ***Ն. Ադոնց****, Երկեր, հատ. Ա, էջ 198–217):*

*10. Ն. Ադոնցի ենթադրությամբ այս Վասակ Մամիկոնյանը 481–484 թթ. հակապարսկական ապստամբության առաջնորդ Վահան Մամիկոնյանի կրտսեր եղբոր՝ Վասակի թոռն էր և որդին Գրիգոր Մամիկոնյանի: Եղել է 529 թ. հակաբյուզանդական ապստամբության ղեկավարներից (տե՛ս* ***Ն. Ադոնց****, անդ, էջ 229):*

## ԲՅՈՒԶԱՆԴԱՀԱՅ ՌԱԶՄԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐԻ ԴԱՎԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴԴԵՄ ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ I-Ի ԸՍՏ ՊՐՈԿՈՊԻՈՍ ԿԵՍԱՐԱՑՈՒ

### ԳՈԹԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

### *Գիրք III*

***32.*** *Ահա այսպիսին էին կայսեր փոխհարաբերություններն Արտավանի[1] ու Գերմանոսի[2] հետ: Բյուզանդիոնում էր գտնվում Արտավանի ազգակիցներից հայազգի ոմն Արշակ Արշակունի: Սա փոքր առաջ ձերբակալվել էր պետության դեմ ոտնձգություններ կատարելու, նաև բացահայտված դավաճանության՝ պարսից արքա Խոսրովի օգտին[3] հռոմայեցիների դեմ խռովություն բարձրացնելու փորձի համար: Կայսրն առանձնապես չպատուհասեց նրան, միայն գանակոծության ենթարկեց, այն էլ ոչ խիստ, և ուղտի վրա ման ածեց քաղաքով մեկ, բայց մարմնական վնաս չհասցրեց նրան, ոչ էլ ձեռք տվեց նրա ունեցվածքին, դեռ ավելին, չաքսորեց նույնիսկ: Հակառակ դրան, Արշակը, կատարվածից ոժգոհ, սկսեց դավադրություններ կազմակերպել Հուստինիանոսի և պետության դեմ: Երբ տեսավ, որ իր ազգական Արտավանը ևս իր պես վիրավորված է, սկսեց ավելի*

*գրգռել նրան, գիշեր-ցերեկ հանգիստ չտալ ու պախարակել, անվանելով քաջ մարդ և միաժամանակ ձվատ[4]. նա քաջ էր՝ ի դժբախտություն ուրիշների, երբ բռնատիրությունը ճնշեց և առանց պատճառի բռնեց ու սեփական ձեռքով սպանեց իր ընկեր և սեղանակից Գոնթարիսին[5]: Իսկ այժմ, երբ իր հայրենիքն ամուր կապանքների մեջ է առնված, նրա վրա են դրված անօրինակ ծանր հարկեր, երբ իր հայրը սպանվել է, հակառակ նրան տրված երաշխիքների[6], երբ ամբողջ իր հարազատ [ժողովուրդը] ստրկացված և ցրված է ամբողջ Հռոմեական երկրով մեկ, ինքը վախեցած ու անգործ նստած է: Նման պայմաններում Արտավանն իրեն բավարարված է զգում, որովհետև ինքը հռոմայեցիների զորավար է և հյուպատոս է կոչվում: «Դու,— ասաց նա,— լինելով իմ ազգակիցը, բոլորովին չես մտնում իմ դրության մեջ. ես անչափ մեծ դժբախտությունների հանդիպեցի: Սակայն խղճում եմ քեզ երկու կնոջ հետ ունեցած քո անհաջողության համար, և՛ այն կնոջ համար, որից դու հակառակի պես զրկվեցիր, և՛ նրա համար, որի հետ ստիպվեցիր կենակցել: Մի քիչ խելք ունեցողի համար ծայրահեղ անմտություն է Հուստինիանոսին առանց զլանալու և որևէ վախի սպանելուց հրաժարվելը: Նա, առանց պահապանների, զառամյալ հոգևորականների հետ չարունակ, մինչև ուշ գիշեր նստած է ինչ-որ ժողովարանում, խորհրդածելով քրիստոնեական դոգմաների շուրջը: Նույնիսկ Հուստինիանոսի ազգականներից ոչ ոք այդ բանը չի ժխտի: Նրանցից ամենահզորը Գերմանոսն է, որը, կարծում եմ, հաճույքով կմիանա քեզ իր երիտասարդ որդիների հետ: Նրանց տարիքից բխող ավյունը և ունեցած զայրույթը նրա դեմ, հույս ունեմ, որ ինքնաբերաբար մասնակից կդարձնեն նրանց [այս] գործին, որովհետև [Հուստինիանոսը] այնքան է վիրավորել, վնաս պատճառել նրանց, որքան ո՛չ մեզ և ո՛չ էլ հայերից որևէ մեկին»: Ահա այսպիսի խոսքերով Արշակն անդադար խելքահան էր անում Արտավանին և, երբ տեսավ, որ սա տեղի տվեց, նույն գործով դիմեց մի այլ պարսկահայի՝ Խանարանգես անունով: Այս Խանարանգեսը երիտասարդ էր, գեղեցիկ կազմվածքով, բայց չատ թեթևամիտ և չափից ավելի տհաս:*

*Ահա՛, երբ Արշակը համաձայնության եկավ Արտավանի հետ, հեռացավ, խոստանալով գործին մասնակից դարձնել Գերմանոսին և նրա որդիներին: Գերմանոսի որդիներից ավագը՝ Հուստինիանոսը, թեև երիտասարդ էր և նրա աղվամազը դեռ նոր էր բուսնում, բայց կարող էր և չատ գործունյա: Նա քիչ առաջ արժանացել էր հյուպատոսի աստիճանին: Արշակը, գնալով նրա մոտ, ասաց, որ ցանկանում է գաղտնի հանդիպել նրան որևէ մի եկեղեցում: Երբ երկուսն էլ մտան*

*եկեղեցի, Արշակը նախ պահանջեց Հուստինոսից երդվել, որ իրենց խոսակցության մասին բացի իր հորից ոչ մեկին բան չի ասելու: Երբ նա երդվեց, [Արշակը] պախարակեց նրան, որ կայսեր մերձավորագույն ազգականը լինելով, հանգիստ նայում է, թե ինչպես երկրի իշխանությունն անցնում է չուկայի, անարժան ու կոպիտ մարդկանց ձեռքը, և ինքը լինելով այսպիսին՝ համաձայնվում է, որ պետության գործերը վարեն հասարակ ծագում ունեցող մարդիկ. նա ասաց, որ [կայսրը] արհամարհում է ո՛չ միայն նրան, այլև նրա հորը, անչափ առաքինի մարդու, որ իր եղբորը՝ Հուստինիանոսին չարքային քաղաքացիների վիճակում է թողել. նույնիսկ հորեղբոր հարստությունը չկարողացավ ժառանգել, թեև Բորայիդեսի[7] ցանկությամբ ինքն էր ժառանգելու այն, բայց հետագայում անտեղի զրկվեց նրա մեծ մասից, հակառակ այդ բոլորին, իրենք դեռ քաշելիք ունեն, երբ Բելիսարիոսը[8] շուտով Իտալիայից վերադառնա, քանզի լուր էր ստացվել, որ նա արդեն Իլլիրիայում է գտնվում: Արշակն այս ասելով, հորդորում էր երիտասարդին՝ մասնակցելու դավադրության ընդդեմ կայսեր, միաժամանակ հայտնելով նրան իր և Արտավանի ու Խանարանգեսի միջև սույն գործի կապակցությամբ կայացած համաձայնության մասին: Հուստինոսը լսելով այս՝ ապշահար եղավ, սարսափահար պատասխանեց Արշակին, որ ոչ ինքը, ոչ էլ իր հայր Գերմանոսը նման քայլի երբեք չեն դիմի:*

*Արշակը եղածի մասին հայտնեց Արտավանին, իսկ Հուստինոսն էլ իր հերթին ամեն ինչ պատմեց հորը: Վերջինս այս հարցի շուրջ խորհրդակցեց պալատական կայազորի պետ Մարկելլոսի հետ, ձեռնտո՞ւ է արդյոք այդ մասին հայտնել կայսրին:*

*Մարկելլոսը շատ լուրջ մարդ էր, բարոյական, սակավախոս, նա չէր գործում շահից դրդված, չէր կարողանում տանել թեթևսոլիկ մարդկանց ասածն ու արածը, չէր սիրում անհոգ կյանքը: Նա մշտապես վարում էր խիստ և հաճույքներից զուրկ կյանք, բայց արդարության թունդ պահապանն էր, ճշմարտասիրության ջերմ պաշտպանը: Նա չթողեց, որ այդ մասին անմիջապես հայտնվի կայսրին: «Քեզ համար,– ասաց նա,– ձեռնտու չէ հայտնել այդ մասին, որովհետև, եթե ցանկանաս գաղտնի կերպով որևէ բան ասել կայսրին, Արտավանի մարդիկ անմիջապես կիմանան մատնության մասին, և եթե Արշակին հաջողվի թաքուն փախչել, դավադրությունը հնարավոր չի լինի ապացուցել: Ես մինչև մանրակրկիտ կերպով ամեն բան չստուգեմ, ոչ ինքս հավատ կընծայեմ դրան, ոչ էլ կայսրին կհայտնեմ: Ես ցանկանում եմ կամ խոսակցությունը իմ ականջով լսել և կամ էլ դուք այն-*



*Խոսրով I Անուշիրվան*

*պես կազմակերպեք, որ իմ մարդկանցից որևէ մեկը այս [գործի] մասին որևէ հստակ բան լսի նրա կողմից»:*

*Գերմանոսը լսելով այդ՝ հրամայեց իր որդի Հուստինոսին անել այնպես, ինչպես կկարգադրի Մարկելլոսը: Արշակին դիմելու միտք չուներ, քանի որ, ինչպես արդեն ասացի, [Հուստինոսը] մերժել էր նրա առաջարկը: Նա հարցով դիմեց Խանարանգեսին, նրա մոտ եղե՞լ է արդյոք Արշակը՝ հայտնի ծրագրով, Արտավանի կարգադրությամբ: [Խանարանգեսը] պատասխանեց, թե «Ես երբեք չէի խիզախի նրա նման մարդու որևէ գաղտնիք վստահել: Բայց եթե դու ուզում ես տվյալ գործի կապակցությամբ որևէ բան ասել, ապա ինձ հետ խորհրդակցելով, կարելի է գործը հաջող գլուխ բերել»: Այդ հարցի շուրջը Խանարանգեսը խորհրդակցեց Արտավանի հետ և Հուստինոսին հայտնեց այն ամենը՝ ինչ նախապես Արշակն էր ասել իրեն:*

*Երբ Հուստինոսը համաձայնվեց անել ամեն ինչ և խոստացավ հորը համամիտ դարձնել այդ գործին, Գերմանոսը որոշեց Խանարանգեսին տեսակցության հրավիրել և սահմանեց խորհրդակցության օրը: Այդ մասին Գերմանոսն իմաց տվեց Մարկելլոսին և խնդրեց, որ իր մերձավորագույններից որևէ մեկին ուղարկի՝ Խանարանգեսի ասելիքին ականջալուր լինելու համար: [Մարկելլոսը] ուղարկեց Աթանասիոսի փեսա Լեոնտիոսին, մի ճշմարտախոս և չատ արդարասեր մարդու: Գերմանոսը նրան [իր] տունը մտցնելով, նստեցրեց մի սենյակում, որտեղ կախված էր մի հաստ պաստառ՝ վարագույրն այն բազմոցի, որի վրա նստած նա ճաշում էր: Ահա այդ վարագույրի*

*ետևում նա Թաքցրեց Լեոնտիոսին, իսկ ինքն իր որդի Հուստինոսի հետ [վարագույրից] դուրս մնացին: Երբ ժամանեց Խանարանգեսը, Լեոնտիոսը նրանից լսեց այն ամենի մասին, ինչ ծրագրել էին ինքը՝ Խանարանգեսը, Արտավանն ու Արշակը: Նա ավելացրեց նաև, որ եթե կայսրին սպանեն այն ժամանակ, երբ դեռ Բելիսարիոսը չի ժամանել Բյուզանդիոն, ծրագիրն անհաջողության կմատնվի, որովհետև եթե իրենք կայսր հայտարարեն Գերմանոսին, Բելիսարիոսն, անկասկած, Թրակիայի բնակավայրերից մեծ զորք գումարելով՝ իրենց վրա կշարժվի և նրան դիմադրել հնարավոր չի լինի: Դրա համար անհրաժեշտ է, որ գործը հետաձգվի մինչև Բելիսարիոսի վերադարձը, որպեսզի երբ նա հասնի Բյուզանդիոն և լինի պալատում, կայսեր մոտ, այն ժամանակ, ուշ երեկոյան դաշույններով անսպասելի հայտնվեն և սպանեն կայսեր հետ միասին նաև Մարկելլոսին և Բելիսարիոսին. դրանից հետո ավելի աներկյուղ կտնօրինեն գործերը:*

*Նույնիսկ այն ժամանակ, երբ Մարկելլոսը Լեոնտիոսից իմացավ այդ մասին, նա ոչինչ չասաց կայսրին և չարունակեց անչափ դանդաղել. նա վախենում էր, որ հանկարծ իր չտապողականությամբ անմտորեն Արտավանին ձեռքից բաց կթողնի: Իսկ Գերմանոսը, երկյուղ զգալով, որ իր հապաղումը որևէ մեկի մոտ կասկած կհարուցի իր դեմ, որը, ի դեպ, և տեղի ունեցավ հետագայում, ամեն ինչ հայտնեց Բուզեսին և Կոստանդիանոսին:*

*Մի քանի օր անց, երբ լուր տարածվեց, որ Բելիսարիոսը շատ մոտիկ է գտնվում, Մարկելլոսը կայսրին ամեն ինչ պատմեց. վերջինս անմիջապես հրամայեց բանտ նետել Արտավանին և նրա համախոհներին, իսկ իշխանավորներից ոմանց հանձնարարեց [ձերբակալվածներին] քննել: Երբ դավադրությունն ամբողջությամբ լույս աշխարհ եկավ և [հարցաքննությունը] հանգամանորեն գրի առնվեց, կայսրը բոլոր սենատորներին պալատ հրավիրեց՝ այնտեղ, ուր սովորաբար քննվում էին վիճելի հարցերը: Նրանք կարդացին այն բոլորը, ինչ [Արտավանը] ասել էր քննիչներին, բայց, այնուհանդերձ, ոչ պակաս մեղավոր հանեցին Գերմանոսին և նրա որդի Հուստինոսին, մինչև որ Գերմանոսը, դիմելով Մարկելլոսի և Լեոնտիոսի վկայությանը, կարողացավ ցրել կասկածը, որովհետև նրանք, նաև Կոստանդիանոսն ու Բուզեսը երդումներով հաստատում էին, որ Գերմանոսը ոչ մի բան չի Թաքցրել, որ ամեն ինչ կատարվել է այնպես, ինչպես ես քիչ առաջ պատմեցի: Ահա բոլոր սենատորներն արդարացրին նրան և նրա որդուն՝ որպես պետության հանդեպ ոչ մի հանցանք չկատարածների:*

*Երբ բոլորը մտան կայսեր հարկաբաժինը, կայսրը շատ զայրացած և վրդովված՝ կատաղել էր Գերմանոսի դեմ, որ նա հապաղել է իրեն*

*Հայտնել, իսկ իշխանավորներից երկուսը, որոնք սպասարկում էին [կայսրին], հաստատում էին նրա ասածը և ցույց տալիս, որ նույնպես վրդովվել են: Ջանալով կայսրին հաճոյանալ՝ ուրիշներին դժբախտացնելով, նրանք անչափ բորբոքեցին կայսեր զայրույթը: Իսկ մնացածները երկյուղած, չհակառակվելու համար կայսրին, լռում էին: Միայն Մարկելլոսը ճշմարտությունն ասաց և կարողացավ փրկել մարդուն: Նա ամբողջ մեղքն իր վրա վերցրեց և ասաց, որ Գերմանոսը ժամանակին է հայտնել իրեն [դավադրության] մասին, բայց ինքն ավելորդ մանրակրկիտությամբ հապաղեց և գործը ձգձգեց: Ահա այս կերպ նա կարողացավ մեղմել կայսեր զայրույթը: Մարկելլոսը դրանով բոլորի մոտ մեծ հռչակ վաստակեց, որպես ամենադժվարին պահին առաքինություն ցուցաբերած: Իսկ Հուստինիանոս կայսրը զրկեց Արտավանին իր ունեցած պաշտոնից, բայց ուրիշ պատիժ չտվեց, ոչ էլ մնացածներին, այլ միայն բանտարկեց, այն էլ ոչ պետական բանտում, այլ պալատում[9]:*

*1. Արտավան Արշակունու մասին տե՛ս սույն, էջ 306, ծան. 9-րդ:*

*2. **Գերմանոս** – բյուզանդական զորավար, քաղաքական ու պետական գործիչ, Հուստինիանոս I-ի եղբորորդին:*

*3. Խոսքը պարսից Խոսրով I Անուշիրվան (531-579) արքայի մասին է:*

*4. Ջվատ, այսինքն՝ ամորձատ, կրտած, ներքինի: Տվյալ կոնտեքստում օգտագործվել է փոխաբերական իմաստով իբրև վախկոտ, անարի մարդ:*

*5. **Գոնթարիս** – բյուզանդական զորավար, Աֆրիկա պրովինցիայի կառավարիչ:*

*6. Նկատի ունի Բուզես զորավարի կողմից դավադրաբար սպանված Հովհաննես Արշակունուն:*

*7. Բորայիդեսը Հուստինիանոս I-ի եղբորորդին էր, Գերմանոսի կրտսեր եղբայրը:*

*8. **Բելիսարիոս** – բյուզանդական ականավոր զորավար, Հուստինիանոս I-ի մերձավորագույն զինակիցը:*

*9. Դավադրությունն ընդդեմ Հուստինիանոս I-ի տեղի է ունեցել 548 թվականին:*

## 571-572 ԹԹ. ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ԴԵՄ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Ը.** Վահանից հետո մի կարճ ժամանակ [մարզպանական] իշխանությունն առավ նրա եղբայր **Վարդ Պատրիկը**[1] և <ապա> մեռավ[2]: Նրանից հետո մարզպան եկան պարսիկները[3], ապա հայերը չկարողացան պատերազմել, մնացին հնազանդ մինչև Սուրեն մարզ-*

*պանը[4] և մինչև Մամիկոնյանների տեր Վարդանը:*

*Եվ եղավ՝ Կավատի որդի Խոսրովի թագավորության 41-րդ տարում[5] Վարդանն ապստամբեց և ամենայն Հայոց միաբանությամբ դուրս եկավ պարսից թագավորությունից: Դվին քաղաքում հանկարծակիորեն սպանելով Սուրեն մարզպանին[6]՝ [հայերը] մեծ ավար առան և գնացին հույներին ծառայության:*

*Սրանից առաջ ապստամբելով՝ հայերից անջատվեց Սյունյաց աշխարհի Վահան անունով զորապետը և խնդրեց պարսից Խոսրով արքայից, որ Սյունյաց աշխարհի դիվանը Դվինից տանեն Փայտակարան քաղաք, ու քաղաքն ընդգրկի Ատրպատականի բնակավայրերի ցուցակում, որպեսզի Հայաստանի անունն այլևս իրենց վրա չտարածվի: Եվ կատարվեց հրամանը[7]:*

*Իսկ հունաց թագավորը երդվեց հայերին և վերահաստատեց նույն ուխտը, որ կար երկու թագավորների՝ երանելի Տրդատի և Կոստանդիանոսի միջև, և տվեց նրանց կայսերական զորքերն օգնության: Եվ նրանք, առնելով զորքը, դիմեցին Դվին քաղաքի վրա, պաշարելով կործանեցին վերից վար և հալածեցին պարսից զորքին, որ գտնվում էր այնտեղ:*

*Բայց հանկարծակի նրանց մեջ մեծ խռովություն ընկավ, քանի որ Սուրբ Գրիգոր եկեղեցին, որ շինված էր քաղաքի մոտ, <և որը> պարսիկները դարձրել էին մթերանոց, կրակ գցեցին և այրվեցին. այս պատճառով նրանց <մեջ> մեծ խռովություն ընկավ:*

*Ապա 20 հազարանոց զորքով և բազում փղերով նրա [Վարդանի] վրա եկավ Միհրան Միհրևանդակը: Եվ մեծ պատերազմ եղավ Խաղամախի դաշտում[8], և [հայերը] պարսից զորքին սաստիկ հարվածներով ջարդ տալով՝ սրի քաշեցին, բոլոր փղերին խլեցին: Իսկ Միհրանը, քչերի հետ փրկվելով, գնաց իրենց երկիրը:*

*Այս այն Վարդանն է, որի վրա հարձակվեց ինքը՝ Անուշըրվան Խոսրով կոչված պարսից արքան, սպառազեն զորքերի բազմությամբ և բազում փղերով հանդերձ. ճանապարհ ընկնելով Արտազ գավառով՝ գնաց Բագրևանդի ուղղությամբ՝ շրջանցելով Կարին քաղաքը: Եվ չարժվեց գնաց Մելիտինե ու բանակ դրեց նրա դեմ հանդիման:*

*Հաջորդ առավոտ հապշտապ դասավորեցին գունդ առ գունդ ու ճակատ առ ճակատ և իրար բախվեցին պատերազմով: Եվ սաստկացավ պատերազմը երկրի վրա, և տեղի ունեցավ կատաղի ճակատամարտ, և Տերը պարտության մատնեց պարսից թագավորին ու նրա ամբողջ զորքը: Եվ թշնամու առջև ջարդ կրեցին սրով սուսերի և փախան նրանցից սաստիկ տագնապով. չիմանալով իրենց փախուստի ճանապարհները՝ գնացին թափվեցին մեծ գետի մեջ, որ կոչվում է*

*Եփրատ: Եվ ջուրը հորձանք տալով՝ քշեց փախստականների բազմությունը որպես մորեխների խումբ, և այն օրը քչերը կարողացան ճողոպրել: Բայց թագավորը քչերի հետ մազապուրծ փրկվեց՝ ապավինելով փղերին ու ձիերին, և փախչելով Աղձնիքով դարձյալ գնաց իր նստավայրը:*

*Եվ նրանք տիրեցին ամբողջ բանակին՝ արքունական գանձերով հանդերձ: Գերեցին բամբիշին և կանանց*[9]*, խլեցին ողջ կանանոցի վրանները, թանկագին ոսկեղեն գահույքը, որ ընդելուզված էր պատվական քարերով և մարգարիտներով, որը նրանց կողմից անվանվում էր փառաց դեսպակ: Վերցվեց նաև հրատը*[10]*, որը թագավորը հանապազորդ տանում էր իր հետ՝ որպես օգնականություն իրեն. այն բոլոր կրակներից ամենամեծն էր համարվում, և որը նրանց կողմից անվանվում էր Աթաչ, ջրահեղձ եղավ մոգպետական մոգպետով և մեծամեծ ավագների այլ բազմությամբ հանդերձ: Ամենայն ժամ օրհնյալ է Աստված:*

*1. Վարդ Մամիկոնյանը Հայոց մարզպան է նշանակվել 505 թվականին: Նույն ժամանակ էլ Բյուզանդիայի Անաստաս կայսեր կողմից արժանացել է պատրիկության պատվաստիճանի, որի պատճառով էլ ժողովրդի հիշողության մեջ մնացել է իբրև «Վարդպատրիկ»:*

*2. 509 թ. պարսից Կավատ թագավորը Վարդին կանչել է Տիզբոն և զրկել մարզպանի պաշտոնից: Նույն թվականին էլ նա մահացել է Տիզբոնում:*

*3. Վարդից հետո Հայաստանի մ:արզպան է նշանակվել պարսիկ Բուրգանը (509-520):*

*4. Սուրեն Ճիհովր Վշնասպը Հայաստանի մարզպան է նշանակվել 564 թվականին:*

*5. Խոսրով I-ի գահակալության 41-րդ տարին դա 571-572 թվականն է:*

*6. Հայոց մարզպան Սուրենը սպանվել է 572 թ. փետրվարի 2-ին Դվինի համար մղված մարտերի ժամանակ: Ըստ Անանիա Շիրակացու, մենամարտի ժամանակ նրան սպանել է Զորակ Կամսարականը:*

*7. Սյունիքը Հայաստանից անջատվել և դարձել է առանձին շահր 571 թվականին:*

*8. Խաղամախի դաշտը տեղադրվում է Վասպուրական աշխարհում՝ Մարդաստան գավառի սահմաններում:*

*9. Այսինքն՝ հարեմը, կանանոցը:*

*10. Խոսքը թագավորական չարժական ատրուշանի մասին է:*

## ՀՈՎՀԱՆ ԵՓԵՍԱՑԻՆ 571-572 ԹԹ. ՀԱՅԵՐԻ ՀԱԿԱՊԱՐՍԿԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Հովհան Եփեսացին (507-586) ասորական պատմական գրականության ամենանշանավոր ներկայացուցիչներից է: Աստվածաբանա-***

*կան փայլուն կրթություն է ստացել Ամիդից ոչ հեռու գտնվող «Համբերություն» կոչվող վանքում: Նախապես ունեցել է չեչտված հակաքաղկեդոնական կողմնորոշում, գործուն մասնակցություն է ունեցել հակաբյուզանդական շարժումներին: Հետագայում համագործակցել է Բյուզանդիայի քաղաքական և եկեղեցական շրջանների հետ, եղել Հուստինիանոս I կայսեր հովանավորյալը: Վերջինիս երաշխավորությամբ էլ 542 թ. նշանակվել է Եփեսոսի եպիսկոպոս:*

*Հեղինակ է «Եկեղեցական պատմություն» ծավալուն երկասիրության, որի երրորդ գրքում չափազանց արժեքավոր տեղեկություններ կան ժամանակաշրջանի հայ ժողովրդի պատմության, մասնավորապես 571–572 թթ. հակապարսկական ազատագրական պատերազմի վերաբերյալ: Այդ տեղեկությունները նրան են փոխանցել Կոստանդնուպոլսում ապաստանած Հայոց կաթողիկոս Հովհաննես Բ Գաբեղենացին և նրա շքախմբի մարդիկ: Ի դեպ, այդ տեղեկություններից շատերը բացակայում են հայկական սկզբնաղբյուրներում:*

*Հովհաննես Եփեսացու «Եկեղեցական պատմության» այն նյութերը, որոնք վերաբերում են հայ ժողովրդի պատմությանը, ասորերենից հայերեն է թարգմանել Հ. Գ. Մելքոնյանը («Օտար աղբյուրներ Հայաստանի և հայերի մասին». 8. Ասորական աղբյուրներ. Ա. Երևան, 1976): Ստորև բերվող հատվածները տրվում են ըստ այս հրատարակության:*

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Գիրք II*

***Գլ. 18.*** *Չնայած մենք խոստացել էինք գրել միայն այն մասին, ինչի որ ականատես ենք եղել, և այն փորձությունների մասին, որոնց մոտ էինք կանգնած. այժմ մտածում ենք, որ արդյո՞ք ճիշտ կլիներ գրել այն հիշողությունների մասին, որոնց ականատես չենք եղել, անձամբ չենք իմացել և ոչ էլ դրանց արժանահավատությունն անձամբ կարող ենք հաստատել: Թեև մենք հեռու ենք այն երկրներից, որտեղ տեղի են ունեցել այդ բաները, բայց որովհետև այդ ամենն իմացել ենք ոչ թե հասարակ և կամ ցածր խավի մարդկանցից, այլ Պարսկական Հայաստանի՝ Դվինում (բազմած) գլխավոր կաթողիկոսից[1] և նրան ընկերակցող եպիսկոպոսներից (դրա համար գրեցինք): Նրանք այդ իրադարձությունների մասին մեզ պատմեցին հռոմների թագավորական քաղաքում՝ (Կոստանդնուպոլսում) բազմության ներկայությամբ: Փախչելով պարսկական իշխանությունից, նրանք ապաստան էին գտել*

*քրիստոնեական պետության մեջ, և մեծ հարգանքով ընդունվել Նորին հաղթական մեծության (կայսրի)[2] կողմից. նրանք շատերի ներկայությամբ ազնվությամբ ու երդումով հետևյալը պատմեցին։*

## *Գլ. 19. ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ՄՈԳԵՐՆ ԻՆՉ ԱՍԱՑԻՆ ԽՈՍՐՈՎ ԹԱԳԱՎՈՐԻՆ ՆՐԱՆՑ (ՀՌՈՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ)*

*Այն ժամանակ հավաքվեցին բոլոր մոգերը և Խոսրովին՝ իրենց արքային ասացին. «Թագավոր ապրած կենաս, ահա մենք իմացանք՝ որ հռոմների կայսրը, բոլոր նրանցից, որոնք ապրում են իր պետության մեջ, պահանջում ու ստիպում է, որ ընդունեն իր կրոնն ու հավատը, և բոլոր նրանք, որոնք իրեն չեն ենթարկվում, ամբողջ իր պետությունից արտաքսում ու հալածում է։ Թող Ձեր աստվածային մեծությունը ևս այդպես հրամայե, որպեսզի բոլոր կրոնները համակերպվեն քո կրոնին, և քո իշխանության ներքո ապրող անձինք պաշտեն այն, ինչ որ դու ես պաշտում։ Եվ նրանք, որոնք կհամարձակվեն քո հրամանին հակառակվել, թող այլևս չապրեն (մահվան դատապարտվեն)։ Եվ երբ Խոսրով արքան լսեց մոգերից այս խոսքերը, համաձայնվեց նրանց ասածին և ընդունեց նրանց խորհուրդը, և անմիջապես սկսեց նախ՝ քրիստոնյաներից, և ուղարկեց, որ բռնեն երեք եպիսկոպոսների և շատ կղերականների, և հրամայեց նրանց հրաժարվել իրենց հավատից և իր հետ պաշտել կրակը, արևն ու այլ աստվածություններ։*

*Սակայն նրանք առարկեցին նրան և քաջաբար դիմավորեցին ու խոստովանեցին ասելով. «Մենք քրիստոնեական հավատք ունենք և պաշտում ու պատվում ենք Աստծուն, որը ստեղծել է երկինքն ու երկիրը, ծովն ու այն ամենը, որ կա նրանց մեջ, և մենք չենք կարող թողնել նրան՝ ամեն ինչի Արարչին ու պաշտել նրա արարածներին։ Մի՛ մոլորվիր արքա, որովհետև դու (ճիշտ է) մեր մարմինների վրա իշխանություն ունես և կարող ես ուզածդ անել, բայց մեր հոգիները Նրանն են (Աստծուն) և դրանց վրա դու բացարձակապես ոչ մի իշխանություն չունես։ Եվ երբ արքան լսեց եպիսկոպոսներին արժանի այս և նման այլ խոսքեր, հրամայեց և անմիջապես նրանց տարան ու (ապա) մահացրին (սպանեցին)։ Եվ քրիստոնյաներին պատճառած բազմաթիվ այլ չարիքներից բացի, նա ավերեց բազում վանքեր և եկեղեցիներ, և շատերին էլ կապեց (շղթայով) և գցեց բանտը։ Իր սրտում թագավորը հպարտացավ և հայհոյում էր Քրիստոսին ու ասում. «Տեսնենք քրիստոնյաների Աստված՝ Քրիստոսն ինչ է անելու ինձ, որովհետև ես չգիտեմ, թե ո՞վ կամ ի՞նչ է նա»։ Այս և նման այլ*

*շատ բաներ պատմեցին եպիսկոպոսներն այն մասին, թե ինչ է խոսել ու կատարել պարսիկների թագավորը, մինչև այն ժամանակ, երբ Հայաստանը ենթարկվեց հոռոմներին: Այդ պատճառով էլ, նա (Խոսրովը) հրամայեց կրակի ատրուշաններ կառուցել ամբողջ Պարսկական Հայաստանում:*

## *Գլ. 20. ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐԻ՝ ՄԵԾ ՀԱՅՔՈՒՄ (ԱՊՐՈՂ) ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ԴԵՄ ՍԿՍԱԾ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ*

*Այս բոլորից հետո կաթողիկոսն ու նրան ընկերացողներն ասացին. «Նա (Խոսրովը) 2000 զինված ձիավորներով մի մարզպան[2] ուղարկեց մեր երկիրը, որոնք նախ եկան մեր քաղաքը և հրամայեցին մեզ, կրակի ատրուշան կառուցել, որպեսզի թագավորի հավատի համաձայն ծես կատարվի»: Այսպես պատմեց և ասաց կաթողիկոսը. «Երբ նա ցույց տվեց ինձ և քաղաքացիներին հրամանը. ես նախանձախնդրությունից բորբոքվեցի և հակառակվեցի նրան. ես և բոլոր քաղաքացիներն ասացինք. չնայած մենք իսկապես արքայից արքայի ծառաներն ենք և նրան հարկ ենք վճարում, բայց մենք քրիստոնյաներ ենք և հավատի խնդրում չենք ենթարկվում նրան, եթե նույնիսկ պետք լինի մեռնել մեր հավատի սիրույն: Նույնը փորձեցին անել նաև արքայից արքա Շապուհի ժամանակ, որը նույնպես ցանկացավ պաշտամունքի ատրուշան կառուցել, սակայն ժողովուրդը հավաքվեց ու միաբանաբար (դիմադրեց), և պատերազմը տևեց յոթ տարի, և վերջում համաձայնության եկավ և հրաման տվեց, որ քրիստոնեության հարցն այլևս երբեք մեզ մոտ քննարկման ու հետապնդման առարկա չի լինելու: Շապուհ թագավորի այս հրովարտակի կրկնօրինակը ևս ցույց տվեցինք նրան, սակայն նա չհամաձայնվեց մեզ հետ, և ինչպես հրամայված էր, նա բռնի (ատրուշանի) տեղը նշանակեց և (սկսեցին) հիմքը փորել և պատերը կառուցել, նույն ժամանակ ճակատամարտի համար նախապատրաստություններ տեսավ: Չնայած ես նրան խնդրեցի և աղաչեցի, բայց նա ինձ չլսեց, ոչ էլ (ասածներիս) ուշադրություն դարձրեց: Ի վերջո տեղեկություն ուղարկեցի մեր երկրի բոլոր բնակիչներին, և երբ նրանք լուրն իմացան, Քրիստոսի հավատի նախանձախնդրությունից տարված, բոլորը՝ մոտ տասը հազար մարդ, մեկ մարդու նման, հավաքվեցին, զինվեցին ու ճակատամարտի պատրաստվեցին Քրիստոսի համար ապրելու կամ մեռնելու հաստատ որոշումով, որ թույլ չեն տա մոգերին հեթանոսական ատրուշան կառուցել մեր երկրում: Երբ հավաքվեցին երկրի բոլոր տերերն ու*

*մեծերը, մենք գնացինք մարզպանի մոտ, այնտեղ, որտեղ նա սկսել էր կրակի ատրուշանի կառուցումը, և երկար զրույց ունեցանք, նրա հետ վիճելով ասացինք. «Մենք քրիստոնյաներ ենք և արքայից արքայի հպատակները, բայց հավատի հարցում, մենք չենք ենթարկվի կամ լսի որևէ մեկին, եթե նույնիսկ ինքը՝ թագավորը անձամբ գա, և մինչև որ մեզանից վերջինը չմահանա, ոչ մի հեթանոսական տաճար չի կառուցվելու մեր երկրում: Ուստի առանց պատերազմի ու ավերածության գնա՛ մեր երկրից և ասա՛ արքային մեր հավատը պաշտպանելու հաստատ որոշման մասին: Նա իրավունք ունի հրամայելու, որ ամեն ինչ անենք, սակայն մինչև բոլորս չենք մեռնի, մենք թույլ չենք տա մոգերի ատրուշան կառուցել մեր երկրում»:*

*Երկար բանակցություններից հետո, մարզպանն, ինչպես հրամայված էր իրեն, պատրաստվեց (ատրուշանի) կառուցման: Նա առարկում էր ու ասում մարդկանց. «Նայեք, դուք ապստամբվում եք արքայից արքայի հրամանի դեմ և դուք (այս ձևով) անպատվում եք նրան: Նա կարող է ձեզ դաժան մահով պատժել. հասկացեք, թե դուք ինչ եք անում»:*

*Երբ մարզպանը տեսավ նրանց հաստատակամությունը և իրեն դիմադրելու պատրաստակամությունը, և (մանավանդ) հասկացավ, որ նրանք ավելի ուժեղ են, քան ինքը, (ուստի) նա մեկնեց բարկությամբ ու սպառնալիքներով: Մեծ բարկությամբ գնաց և բոլոր տեղի ունեցածը պատմեց արքային. նա (արքան), երբ իմացավ, սաստիկ ջղայնացավ և ցասումով լցվեց ու որոշեց մահով (պատժել) Հայաստանի բնակիչներին: Նա նրանց դեմ ուղարկեց մարզպանին՝ 15 հազար մարդկանցով պատերազմելու համար, հրամայելով, որ եթե նրանք հակառակվեն իր հրամանին, ոչնչացնեն նրանց, և այնտեղ կրակի ատրուշան կառուցեն: Երբ բնակիչներն իմացան այդ մասին, 20 հազար մարդ հավաքվեցին մեկ մարդի նման, մարտի պատրաստ, նույնիսկ մինչև մահ (եթե անհրաժեշտ լինի) պաշտպանելու համար իրենց քրիստոնեությունը: Երբ նրանք (պարսիկները) մոտեցան, սրանք (հայերը) նրանց դեմ տեղավորվեցին ճակատամարտելու համար ու մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի անունով, աղաղակելով հարձակվեցին նրանց վրա: Քրիստոսն ընկճեց նրանց (ուժը) այս երկրի բնակիչների առաջ, և նրանք բոլորին, մինչև վերջին մարդը կոտորեցին: Նրանք (հայերը) սպանեցին նաև մարզպանին, վերցրին նրա գլուխն ու ուղարկեցին պատրիկ Հուստինոսին[3], որ այն ժամանակ բանակել էր սահմանի վրա՝ Թեոդոսուպոլիս քաղաքում[4]:*

*Այս և այլ իրադարձությունները, որոնք հետագայում տեղի ունեցան, պատմելու ու նկարագրելու համար բավական երկար են:*

### *Գլ. 21. ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ԴՐԱՆԻՑ ՀԵՏՈ ՄԵԾ ՀԱՅՔՈՒՄ ԽՈՍՐՈՎԻ ՆԿԱՏՄԱՄԲ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ (ՀԱՅԵՐՆ) ԱՆՋԱՏՎԵՑԻՆ ՆՐԱՆՑԻՑ, ԵՎ ԱՄԲՈՂՋ ԵՐԿԻՐԸ ՀՊԱՏԱԿԵՑՐԻՆ ՀՌՈՄՆԵՐԻՆ*

*Երբ այս բոլորը տեղի ունեցավ և ամբողջ Մեծ Հայքի ժողովուրդը տեսավ, որ իր դեմ դժվար մի պատերազմ արծարծվեց, պարսկական անզգամ պետության կողմից, որպես քրիստոնյաներ, հավաքվեցին բոլոր գավառներից, վախեցած ուզեցին ապաստան որոնել քրիստոնեական պետության (հռոմների) մոտ, ասելով որ «Սրանից հետո քրիստոնյա պետության ծառաներ լինենք և փախչենք, որպեսզի ապաստան գտնենք հռոմների պետության մեջ և փրկվենք մոգության վայրագությունից»: Այս, և այլ բաներ պատմեցին կաթողիկոսն ու իրեն ընկերացած եպիսկոպոսները բարեգութ կայսրի և ամբողջ սենատի առաջ, որոնցից միայն մի փոքր մասը գրի առա որպես հիշողություն: Ապա նրանք պատմեցին այնտեղ եղած պատերազմական ճակատամարտերի, մեծ ավերածությունների մասին: Թե ինչպես հետո, նորից բանակներն իրար ընդհարվեցին և, թե ինչպես պարսիկները չատ անգամ պարտվեցին, և թե ինչպես նրանցից (նույնիսկ) փղեր գրավեցին, և որովհետև այս բոլորը չատ (երկար) է, մենք այժմ դրանք մի կողմ կթողնենք:*

### *Գլ. 22. ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉ ԷԻՆ ՊԱՏՄԵԼ ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ԵՎ ՆՐԱՆ ԸՆԿԵՐԱՑԱԾՆԵՐԸ ԵՎ ԱՅԼՆ*

*Այս ամբողջն ու այլ չատ բաներ է պատմվել մեր հռոմների մայրաքաղաքում չատերի ներկայությամբ Դվինի, որը (գտնվում) է Մեծ Հայքի չրջանում, կաթողիկոսի և իրեն ընկերացած եպիսկոպոսների և ազատների կողմից: Երբ նա (կաթողիկոսը) և այլ եպիսկոպոսներ ու (մի քանի) մեծամեծներ, իր հետ Հայաստանից ժամանեցին, բոլորն էլ մեծ պատվով ընդունեցին և ստացան թագավորական պատիվներ ու նվերներ: Բոլորին, որոնք նրա հետ այնտեղից ժամանել էին, տրվեց բարձր աստիճան, հարուստ տներ և ամուր թագավորական դղյակներ, իսկ նրանց, որոնք մնացել էին (իրենց) երկրում, չատ ոսկի ու տիտղոսներ, ուղարկվեցին. նույնպես, նրանք հռոմների կայսրից երեք տարով ազատվեցին (հարկից): Հրամայվեց, որ օգնություն ցույց տան նրանց, որոնք կռվում են պարսիկների դեմ, ինքնապաչտպանության ու ամբողջ հայկական հողերի ազատագրման համար: Եվ նրանք երկար ժամանակ այն կատարեցին (պայքարեցին), և մոգերի ժողովուրդը հաճախ, որոչ առիթներով, հարձակվում էր քրիստոնյա-*

*ների վրա, և պատերազմը տևեց վեց տարի: Հետագա (իրադարձու-թյունների) մասին իր ժամանակին չատից քիչը կհաղորդենք:*

*Կաթողիկոսն երկու տարի հետո մահացավ մայրաքաղաքում[5] և չվերադարձավ իր հայրենիքը:*

### *Գլ. 23. ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԸ ԺԱՄԱՆԵՑԻՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ, ՄԻԱՄՏՈՐԵՆ ԳՆԱՑԻՆ ԵՎ ՀԱՂՈՐԴՎԵՑԻՆ ՔԱՂԿԵԴՈՆԻ ԺՈՂՈՎԻ (ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ) ԵԿԵՂԵՑՈՒՄ*

*Սկզբում, երբ ժամանեցին Հայոց կաթողիկոսն ու իրեն ընկերացող եպիսկոպոսներն ու մեծամեծները, որպես մոգերի անգգամ ու հեթա-նոս պետությունից փախած անձնավորություններ և որպես քրիս-տոնյաների պետության մեջ ապաստան գտածներ, հենց (տեղ) ժա-մանելիս մեծ հարգանքով ընդունվեցին, և առանց հարցուփորձի նրանք գնացին ու հաղորդվեցին քաղաքի պատրիարքի հետ, առանց ստուգելու ու անհանգստանալու Քաղկեդոնի ժողովի կապակցու-թյամբ, հոռոմների տերության մեջ (մտնող) բոլոր եկեղեցիներում առաջացած վեճերի ու բաժանումների մասին: Երբ եղածն իմացան իրենց երկրում, բարկացան նրանց վրա եպիսկոպոսներն ու բոլոր բնակիչները և խիստ նմակ գրեցին նրանց, այնպիսի խոսքեր (գրե-ցին), որոնց մասին ավելի լավ է առայժմ լռել: Այդ պատճառով (եկածները) բաժանվեցին ու ստեղծեցին իրենց համայնքը մեծ գյուղակներից մեկում, որտեղ ապրում էր իրենց (հայ) մեծամեծներից մեկը: Այնտեղ էին հավաքվում իրենց կաթողիկոսի մահից հետո, համայնքի բազում (անդամներ):*

### *Գլ. 24. ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉ ՊԱՏԱՀԵՑ ՀԵՏՈ, ԵՐԲ ՀԱՅԵՐԸ ՉԵՆԹԱՐԿՎԵՑԻՆ, ԵՎ ԹԵ ԱՅԴ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՀԵՏԱԳԱՅԻՆ ԵՆՔ ԹՈՂՆՈՒՄ, ՈՐՈՎՀԵՏԵՎ ԱՅՆ ՉԱՓԱԶԱՆՑ ԸՆԴԱՐՁԱԿ Է*

*Մենք տեսնում ենք, որ մեր ժամանակ, և հատկապես այժմ, մեր օրերում պատահածներից չատ բան, մանավանդ եթե (գրենք)... Պարսկական Հայաստանի հոռոմներին ենթարկվելու մասին (մանրա-մասնությունները), ապա մեր պատմության սահմաններից դուրս կգանք, որովհետև այդ դեպքը պատճառ եղավ, ամեն կողմից հա-րատև ու բազում պատերազմների ծագման, ահավոր ավերածու-թյունների ու չատ արյուն թափվելուն: Որովհետև մոգն[6] իր խորա-մանկությամբ, նորից վեր կացավ ու հարձակվեց Հայաստանում եղած*

*հռոմների զորքի վրա, հուսալով, որ կոչնչացնի և կընաջնջի նրանց:*

*Երբ չկարողացավ այդ անել (հաղթել), ետ վերադարձավ և մտավ հռոմների Հայաստան, այն հույսով, որ կպաշարի ու կգրավի Կապադովկիական Կեսարիան: Սակայն (հռոմների) զորքը նրան չրջապատեց, պահեց (կանգնեցրեց) առաջխաղացումը և (ապա) Կապադովկիայի մուտքի մոտ, հարձակվեց նրա վրա: Եթե (հռոմ) հրամանատարները համագործակցեին (նա՝ Խոսրովը) կենդանի չէր վերադառնա: Հռոմների կայսրը նորից Հայաստանը հարստացրեց նվերներով, պարգևներով ու բանակ (ավելացրեց Հայաստանում), այնպես որ ամբողջ Պարսկական Հայաստանը պաշարվեց ու նվաճվեց հռոմներից[7]:*

*1. Խոսքը վերաբերում է Հայոց Հովհաննես Բ Գաբեղենացի կաթողիկոսին (557-574), որը 571 թ. իրադարձություններից հետո տեղափոխվել էր Կոստանդնուպոլիս: Հատկանշական է, որ նա 572 թ. Կոստանդնուպոլսում հիմնադրել է հայադավանների կրոնական համայնք:*

*2. Խոսքը Սուրեն Ճիհովը Վշնասպի մասին է:*

*3. Պետք է լինի Հուստինիանոս, որն Արևելքում բյուզանդական բանակների գլխավոր հրամանատարն էր:*

*4. Այս իրադարձությունները տեղի են ունեցել 576 թ. գարնանը:*

*5. Հովհաննես Բ Գաբեղենացին մահացել է 574 թ. Կոստանդնուպոլսում, որտեղ էլ հուղարկավորվել է:*

*6. Ակնարկում է պարսից Խոսրով I Անուշիրվան արքային:*

*7. Իրադարձությունները տեղի են ունեցել պարսկա-բյուզանդական 20-ամյա պատերազմի՝ 574-575 թթ. չրջափուլում:*

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑԻՆ 571-572 ԹԹ. ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Հովհաննես Դրասխանակերտցին հայ միջնադարյան պատմագիտական մտքի երևելի դեմքերից է: Նա ծնվել է մոտ 850 թվականին, Այրարատի Դրասխանակերտ գյուղում: Կրթություն է ստացել Սևանա կղզու ուսումնագիտական կենտրոնում, որտեղ աշակերտել է Մաշտոց վարդապետ Եղիվարդեցուն: Գրավել է բարձր պաշտոններ, եղել Հայոց կաթողիկոս (898-929): Զբաղվել է նաև մատենագրությամբ՝ հեղինակ է «Շարք կաթողիկոսացն Հայոց» և «Պատմութիւն Հայոց» երկասիրությունների:***

***«Շարք»-ը Հայոց կաթողիկոսների մի համառոտ ցանկ է՝ կենսագրական համառոտ տվյալներով:***

***Մովսես Խորենացուց հետո Հովհաննես Դրասխանակերտցին առաջին հայ պատմիչն է, որ շարադրել է Հայոց ամբողջական պատ-***

***մությունը՝ վաղնջական ժամանակներից մինչև 924 թվականը: Մինչև IX դարի կեսերի իրադարձությունների վերաբերյալ տեղեկությունները նա քաղել է նախորդ հեղինակներից, ընդ որում հայտնում է բազմաթիվ տվյալներ, որոնց մեծ մասը մեզ ծանոթ այլ սկզբնաղբյուրներում չեն պահպանվել: Ահա թե ինչու նրա Պատմությունը առաջնակարգ սկզբնաղբյուր է նաև վաղ ավատատիրական Հայաստանի պատմության ուսումնասիրության համար, և ոչ միայն Հայաստանի՝ այլև Վրաստանի, Աղվանքի, խալիֆաթի ու Բյուզանդիայի:***

***Հովհաննես Դրասխանակերտցու «Հայոց պատմությունից» ստորև բերված հատվածները տրվում են ըստ Գ. Բ. Թոսունյանի աշխարհաբար թարգմանության, որը լույս է տեսել «Ուսանողի գրադարան» մատենաշարով (Երևան, 1996):***

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ, էջ 67

*Նրանից հետո հայրապետական աթոռին նստեցնում են Ղևոնդին, որ Փոքր Եռաստ գյուղից էր[1]: Նրա օրոք Պարսկաստանում թագավորում էր Խոսրովը իր հոր՝ Կավատի փոխարեն: Այնուհետև Վարդան Մամիկոնյանը, ապստամբելով նրա դեմ, Դվին քաղաքում սպանում է մարզպան Սուրենին և այլ նախարարների հետ միասին գնում է ծառայելու հույներին:*

*... Այդ ժամանակ պարսից Խոսրով արքան, գումարելով մեծ զորք, հրոսակներ է առաքում Վարդանի դեմ, և մեծ պատերազմ է լինում Խաղամախ դաշտում և Վարդանի զորքն անխնա կոտորում է պարսիկներին[2]:*

*1. Խոսքը Ղևոնդ Ա Եռաստեցի Հայոց կաթողիկոսի (545-548) մասին է:*
*2. Խաղամախի ճակատամարտը տեղի է ունեցել 571 թվականի ամռանը:*

### ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿԸ 571-572 ԹԹ. ՀԱԿԱՊԱՐՍԿԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Ստեփանոս Ասողիկը X դարի երկրորդ և XI դարի առաջին կեսի պատմագիր է: Ծնվել է Տուրուբերան նահանգի Տարոն գավառում: Կրթությունն ստացել է Անիի իմաստասիրական դպրոցում: Հեղինակ է «Պատմություն տիեզերական» խորագիրը կրող երկասիրության, որ գրել է Հայոց կաթողիկոս Սարգիս Ա Սևանցու հանձնարարությամբ: Այստեղ հեղինակը հայ ժողովրդի պատմությունը ներկայացրել է հարևան երկրների և ժողովուրդների պատմության հետ միա-***

***հյուսված: Գիրքը, որ բաղկացած է երեք հանդեսներից (մասերից) սկսվում է աշխարհի Արարչագործությունից և ավարտվում 1004 թ. դեպքերի նկարագրությամբ: Այն արժեքավոր սկզբնաղբյուր է ոչ միայն Հայաստանի, այլև շրջակա երկրների ու ժողովուրդների պատմության ուսումնասիրության համար:***

***Ասողիկի «Տիեզերական պատմությունը» թարգմանվել է ռուսերեն, գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն: Աշխարհաբար թարգմանել և հրատարակել է Վ. Հ. Վարդանյանը (Երևան, 2000): Ստորև բերված հատվածները տրվում են ըստ այս հրատարակության:***

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ

### *Հանդես Բ*

***Գլ. Բ.*** *Մժեժ Գնունուց[1] հետո Հայոց աշխարհին տիրեցին պարսիկ մարզպաններ:*

*Նախ Դենշապուհը, որը ... Որմզդական հուրը վառեց Ռշտունիքում և ստիպում էր քրիստոնյաներին երկրպագել կրակին: Եվ նրանից հետո՝ պարսիկներից ոմն Վարազդատ՝ նրա տոհմից:*

*Այնուհետև պարսից Խոսրով արքան յուր ազգական ոմն Սուրենին, որ կոչվում էր նաև Ճիհովր Վշնասպ, ուղարկում է Հայոց հազարապետ: Սա եկավ տիրեց մեր երկրին՝ խստագույնս հարստահարելով Հայոց նախարարներին. շնանում էր ազատների կանանց հետ, թույլ չէր տալիս տղամարդկանց տեր կանգնելու իրենց կանանց: Դրա համար Վասակի որդի Վարդան բդեշխը, Մամիկոնյան տոհմից, հույժ զայրացած, հարմար ժամանակի սպասելով, սուսերահար է անում Սուրեն մարզպանին (և) երկիրը տապալում՝ Խոսրովի թագավորության քառասունմեկերորդ տարում, որը Հուստինիանոսի[2] թագավորության յոթներորդ տարին է, արեգի ամսի քսաներկուսին, որը փետրվարն է, երեքշաբթի օրը[3]: Եվ Հայոց իշխանները միաբանաբար ապստամբում են Պարսկաստանի դեմ, ձեռք են մեկնում հույներին և նրանց հետ միասին սաստիկ պատերազմ են մղում [պարսից] դեմ: Իսկ Վարդանն առնելով իր ընտանիքն ու այլ պայազատների, փախչում հասնում է Հունաց աշխարհը, թագավորանիստ Կոստանդնուպոլիս քաղաքը: Գնում ներկայանում է Հուստինիանոս թագավորին, որը Սուրբ Սոփիան կառուցեց[4], հաղորդվում է նրա հետ նրանց հավատքով, որի պատճառով էլ Սուրբ Սոփիայի ավագ դուռը կոչվեց նրա անունով և մինչև օրս էլ անվանում են Դուռն Հայոց:*

*Եվ սրանք են ժամանակները կռիվների ու երկպառակության, ան-*

*համար սպանությունների, ունեցվածքի գերեվարության, խռովությունների, կապանքների ու նեղությունների, պակասությունների, դաժան սովի, սրի ու մարդամահերի, ավանների ավերմունքի, չինությունների հրդեհումների և բազմաթիվ երկրների անհամար վնասների, որ հասնում էր երկու կողմերից. մոռացված էր աստվածապաշտությունը:*

*1. Մժեժ Գնունին Հայոց մարզպան է եղել 529-535 թվականների ընթացքում:*

*2. Այստեղ խոսքը Բյուզանդիայի Հուստինիանոս II կայսեր (565-578) մասին է:*

*3. Վրիպակ է. ինչպես հստակորեն մատնացույց է արել Էդ. Դյուլորիեն՝ Սուրենի սպանությունը տեղի է ունեցել ոչ թե 572 թ. փետրվարի (արեգի) 22-ի երեքշաբթի օրը, այլ նույն թվականի փետրվարի 2-ի երեքշաբթի օրը:*

*4. Ակնհայտ շփոթմունք է, քանզի Ս. Սոփիայի տաճարը կառուցել է Հուստինիանոս I կայսրը:*

## VII ԴԱՐԻ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐՆ ԸՍՏ «ՏԱՐՈՆԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ» ՎԻՊԱՍՔԻ

### *ՀՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ*

### *ՏԱՐՈՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ*

***Պատճեն առաջին***

### *Գլ. Բ. ՊԱՐՍԻՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ, ՄԻՀՐԱՆԻ ՏԱՐՈՆ ԳԱԼԸ ԵՐԵՍՈՒՆ ՀԱԶԱՐՈՎ ԵՎ ԿՈՏՈՐՎԵԼԸ ԳԱՅԼ ՎԱՀԱՆԻՑ ՕՁ ՔԱՂԱՔՈՒՄ*

*Պարսից Խոսրով թագավորը ... Միհրանին, որն իր քրոջ որդին էր, ուղարկեց Տարոնի վրա ԼՌ [երեսուն հազարով]: Լսելով պարսից զորքերի ներխուժման մասին՝ Մուշեղ Մամիկոնյանը հրամայեց իր մոտ կանչել Վահանին, որին Տարոնի իշխան էր կարգել այն ժամանակ, երբ ինքը [հայոց] մարզպան էր:*

*– Որդյակ իմ, Վահան,– ասաց նրան,– դու լավ գիտես, թե որքան և որպես եմ ապրել, քանզի չուրջ հարյուր և քսան տարի է[1], ինչ ես պատերազմներ եմ մղում: Քրտինքի փոխարեն ճակատիս արյունն եմ սրբել սլաքներով: Ուժսուններեք ճակատամարտ անձամբ ինքս եմ վարել. այժմ ծեր եմ և դողդոջուն: Իմ օգնականն այժմ Աստված է և դու և ուրիշ ոչ ոք, քանզի իմ միակ որդին[2] մեռավ տասներկու տարեկան հասակում: Արդ, այս բանս մտքումդ լավ պահիր, որդյակ, զի եթե հանուն Քրիստոսի Սուրբ Եկեղեցու նահատակվես, կմարտիրոսանաս անմահությամբ. իսկ եթե նյութեղեն ինչքի համար կռվի*

*դաշտ իջնես ... դու քաջության անուն կվաստակես: Եվ քանզի ես ուրիշ ժառանգ չունեմ, ուստի իմ երկիրն ամբողջ քեզ ու քո ժառանգներին եմ թողնում: Ահա, գնա ուրեմն և աշխատիր իմաստությամբ ձեռքդ գցես թշնամուդ. Սուրբ Կարապետը թող քեզ զորավիգ ու սատար լինի և սուրբ կրոնավորների աղոթքները թող քեզ օգնական լինեն՝ աջից ու ձախից:*

*Իսկ Վահանը հանձն է առնում կատարելու այդ գործը: Սկսեց [այնժամ] դեսպաններ ընտրել և ուղարկել Միհրանի մոտ, որպեսզի նա համաձայնվի և հաշտությամբ թողնի ու գնա: Բայց նա պատասխանում է.– Ես չեմ հաշտվի ու այստեղից չեմ գնա, մինչև Մուշեղ իշխանին ձերբակալած պարսից արքայի մոտ չտանեմ:*

*Ապա Վահանը դարձյալ մարդ ուղարկելով [նրա մոտ] ասում է.– Եթե խոստանաս այս երկրի իշխանությունն ինձ տալ, ինքս Մուշեղ իշխանին կհանձնեմ քո ձեռքը, քանզի ես ինքս էլ նրանից խիստ դժգոհ եմ և [նրանից] ապստամբած ցանկանում եմ քեզ մոտ գալ, որպեսզի հանկարծահաս վտանգից խուսափելով, ապահով լինեմ:*

*Սա էլ ուրախացած [պատգամաբեր] ուղարկեց հայտնելու Վահանին, թե սիրով համաձայն է նրա հետ: Ինքն այդ ժամանակ գտնվում էր Մուշ ավանում, իսկ Մուշեղը՝ Ողական ամրոցում: Իսկ այն զորքերը, որ կրոնավորներին կոտորեցին, անցան դեպի Աստղոն[3] ամրոցը: Երկու օր այնտեղ մնացին, բայց ոչինչ անել չկարողացան:*

*Ուստի չարժվեցին գնացին Միհրանի մոտ և ամրոցի ամբողջ ձևն ու դիրքը բացատրեցին նրան: Երբ Վահանը եկավ Միհրանի մոտ, վերջինս նրանից նաև Աստղոնք ամրոցը պահանջեց:*

*– Այդպես չէ, տեր իմ,– ասաց Վահանը:– Տուր իմ ձեռքը չորս հազար զինվոր, որպեսզի հարձակվենք այն ամուր բերդերի վրա, որոնց մեջ նրա (Մուշեղի) մտերիմ մարդիկն են, նրա [կողմնակիցները], գանձերն ու ունեցվածքը, որ գուցե ինձ ապստամբ համարելով՝ դիմադրեն բռնությամբ և չհանձնվեն իմ ձեռքը: Իսկ այժմ գնանք նախ Օձ քաղաքի[4] վրա, ապա նոր՝ մնացածների:*

*Այնժամ Միհրանը հանձնեց նրա ձեռքը չորս հազար մարդ, ընտիր ձիավորներ: Եվ մինչև գնացին հասան Օձ քաղաքի դարպասին, պարսպի ներսում նենգությամբ մահվան դարան էր պատրաստել իր հետ եկած զորքի համար: Վաղ առավոտյան քաղաքում գտնվողներին պատվեր ուղարկեց՝ դարպասը բաց անել և պարսից զորքին ներս առնել: Որովհետև քաղաքադուռը շատ նեղ էր, մեկական էին ներս մտնում: Նրանք, որ դռնից ներս էին անցնում, խկույն առնում էին, տանում տուն, զգեստները հանում և գլուխը կտրելով՝ պարսպից*

*դուրս, մի աներևույթ խոր տեղ նետում: Զորս հազարից միայն հիսուն հոգի թողել էր Խարձք կոչվող գյուղում:*

*Նրանց (գյուղացիներին) պատվիրել էր, թե երբ որևէ մեկին ձեզ մոտ ուղարկեմ, չուտափույթ Միհրանի մոտ հասեք և օգնական զորք բերեք: Եվ այդպես էլ արեց: Սրանք դարձյալ գնացին Միհրանի մոտ, վերցրին իրենց հետ երկու հազար ընտիր զինվորներ ու բերին Վահանի մոտ: Եվ այդ բոլորը նա այնպիսի հնարամտությամբ էր գործում, որ պարսիկները ոչինչ հասկանալ չկարողացան: Ահա, երբ բավական մոտեցել էին քաղաքի դռանը, Վահանը պարսիկներից խլած ասպազենն ու հանդերձանքը տալով քաղաքացիներին՝ ներսից դուրս կանչեց նրանց: Ապա խրատ տվեց, թե երբ պարսիկները տեսնեն ձեզ, դուք միահամուռ դեպի քաղաքը արշավեք և ներս մտնելով հաղթանակի փողեր հնչեցրեք. դուռն էլ բաց թողեք, որպեսզի նրանք կարծեն, թե քաղաքն արդեն գրավեցին: Եվ այդպես էլ արեցին: Պարսիկները, երբ տեսան, որ նրանք միահամուռ դեպի քաղաքն են դիմում, չափազանց ուրախացած՝ իրենք էլ դեպի քաղաքը արշավեցին և անհամբերությամբ քաղաքի դռնից ներս էին լցվում:*

*Իսկ Վահանը փութանակի առաջ գալով [պարսից] զորքին ավետիս է տալիս և նրանցից քսան հոգի էլ ավետավոր է ուղարկում Միհրանի մոտ՝ թե քաղաքն արդեն գրավեցինք. ապա ինքը կրկին ետ դարձավ պարսկական զորքի ետևից: Երբ նրանցից շատերն արդեն քաղաքն էին մտել և մյուսներն էլ դեռ մտնում էին, հանկարծ սկսեցին կասկածել կատարվածի մասին ու ցանկանում էին ետ դառնալ:*

*Բայց Վահանը հետամուտ լինելով՝ դեպի մորուտներն է քշումլցնում նրանց և ինքն այս կողմից, քաղաքացիք մյուս կողմից՝ քառասուն մարդ ճահճահեղձ արին, իսկ մնացածներին քաղաքում արգելելով՝ բոլորի գլուխները կտրել ու պարիսպների վրա շարել է տալիս: Եվ համրեցին, հենց մենակ այդ օրվա սպանվածները եղան վեց հազար՝ հինգը միայն պակաս: Ապա հրաման տվեց բոլորի քթերը կտրել: Իսկ ինքն առավ իր զորքը՝ հինգ հարյուր մարդ և ելավ, որպեսզի գնա Մուշեղի մոտ: Երեք հարյուր հոգի թողեց Մեղտիի անցման տեղում, երկու հարյուր աշտե[ավոր]ներ էլ Սանասա (Սասնա) ծմակը թողեց, երկու հարյուրն էլ իր հետ վերցնելով գնաց Մուշ [ավան]աքաղաքը՝ Միհրանի մոտ:*

*Ներս մտավ նրա բնակարանը, խոսեց նրա հետ և այսպես ասաց.– Ես քո զորքերից փախստական եղած եկա քեզ մոտ, որովհետև ոչ քաղաքը թողեցին և ոչ էլ ավարամաս մեզ բաժին տվին: Նույնիսկ իմ սեփական զինվորներին էլ քաղաքում փակեցին [արգելեցին]. իսկ ես,*

*ահավասիկ, փախստական քեզ մոտ եմ: Միհրանը որոշեց նրանց դեմ հազար հոգի ուղարկել: Բայց նա (Վահանը) ասում է, թե քո դեմ էլ են ապստամբել. ցանկանում են քաղաքից վերցրած ամբողջ ավարն ու կողոպուտը առած՝ հունաց կողմն անցնել: Ուստի Միհրանը զայրացած նրանց դեմ է ուղարկում երկու հազար մարդ: Այնժամ Վահանը պարսից զորքերին խորհուրդ է տալիս գիշերով չանցնել Մեղտի գետն, այլ իջևանել, հանգստանալ և առավոտյան գնալ: Միգուցե որևէ թշնամի հարձակվի և դուք էլ տեղանքին անծանոթ եք, ասում է նրանց:– Ուստի հազար մարդ անցեք գնացեք դեպի ծծմակը*[5]*, հազար էլ դեպի դաշտը: Եվ կարգելով նրանց համար առաջնորդներ, ինքը ևս Միհրանի մոտից դուրս եկավ, որպեսզի նրանց շուտ ուղարկի: Երբ հասան այնտեղ, ուր պետք է բաժանվեին, հարյուր մարդ առանձնացրեց, որպեսզի նրանց ետևից դեպի ծծմակը գնան, հարյուր հոգի էլ ինքն առնելով՝ մյուսների ետևից գնաց:*

*Երբ գնացին հասան Մեղտի գետի եզերքը, նրանց թողեց գետի այս կողմը, որ քնեն [հանգստանան], իսկ ինքը դարանակալներին պատրաստ պահելով, սպասավորներին հրամայեց անջատել ձիերի երամակը՝ արոտի տանելու պատրվակով: Այսպես բոլորին անհոգ անելով, հանկարծակի երկու կողմերից հնչեցրին փողերը և բոլորին մեջտեղն առնելով խսկույն ևեթ կտրեցին նրանց գլուխներն ու գետը նետեցին. և նրանցից ոչ մեկը չկարողացավ փախչել ազատվել: Ապա հրամայեց երիվարներին ծծմակը տանել: Մինչև սրանք կոտորածի այս գործն էլ ավարտեցին, այնուհետև շարժվեցին մյուսներին ընդառաջ, քանի դեռ նրանք չէին եկել հասել ծծմակին. ուստի այնտեղ կանգ առան, մնացին, մինչև որ [նրանք էլ] եկան, որովհետև այդպես էր պատվիրված Վահանի կողմից:*

*Երբ եկան և բանից անտեղյակ այնտեղ հասան, այնժամ կամուրջի երկու ծայրերը շրջափակեցին, նրանց շուրջանակի մեջտեղը առան և ահեղագոչ որոտալով սկսեցին անխնա կոտորել: Միայն մեկը սրանցից դիակների (կամ թփուտների) տակ թաքնվելով, հեծավ երիվարն ու փախավ դեպի Մուշ: Սակայն երկու հոգի հետապնդեցին նրան և անցնելով գետի այն կողմը, բռնեցին ու գլուխը ջախջախեցին: Ապա նրանցից մեկը վերցրեց մի բուռ ավազ և տալով ընկերոջն ասաց.*

*— Պարսիկներից խորտիկներ պատրաստող, առ, աղը վերցրու: Ուստի և մինչև այսօր էլ այդ տեղը Առաղս է կոչվում: Այստեղ Վահանը հետագայում ավան էլ կառուցեց: Իսկ Վահանը մյուսներին դեպի ճահճուտը քշեց. շատերին այնտեղից հանել չկարողացան, և այնտեղ էլ խեղդվեցին: Իսկ նրանք, որ ցամաքի վրա էին՝ քթները կտրե-*

*ցին պահեցին, գլուխները դաշտում ու մորուտներում սփռեցին: Ապա հավաքել տվեց երկու հազար երիվարները և ուղարկեց Ուղնուտ ամրոցը[6]: Ինքը վեր կացավ շուտափույթ եկավ Միհրանի մոտ: Իր ծառաներին կարգադրեց ճաշկերույթ պատրաստել և Միհրանին էլ հրավիրեց: Սակայն Միհրանը հիվանդությունը պատճառ բռնելով սենյակը մտավ և միայն նրան ներս թողեց: Վահանն ինքը դռնապան դարձավ և այցելության եկող իշխաններին դռնից ետ էր դարձնում ասելով.– Հայոց մարզպանը ճաշի գալ չկարողացավ և ինձ էլ թույլ չտվեց: Սրանք էլ հավաքվելով տաճարներից մեկում գինարբուքի նստեցին: Այդ ժամանակ Վահանը վերցրեց մաղախը, ուր կտրված քթերն էին լցված և ծառաներից մեկին հրամայեց դնել Միհրանի առջև: Վերջինս տեսնելով այդ՝ զարհուրեցավ և հարցրեց Վահանին.*

*– Ի՞նչ բան է այդ, պատմիր ինձ տեսնեմ: Իսկ նա, ինչ կատարվել էր, բոլորը մի առ մի պատմեց հերթով և ոչինչ չթաքցրեց: Միհրանը կատաղած վերցրեց տեգը, որ ծառայի ձեռքին էր և ցանկանում էր հարվածել Վահանին, բայց Վահանը քաշեց սուրը, որն իր գոտուց կախած ուներ, կտրեց նախ նրա (Միհրանի) քիթն ու դրեց նրա առջևն՝ ասելով.– Այդ դո՞ւ ես անարգողը մեր Աստծուն, այդ դո՞ւ էիր, որ մեր սուրբ կրոնավորներին՝ մեր աշխարհի սյուներին գլխատել տվիր: Այնուհետև պատռելով նրա որովայնը, ծառային հրամայեց հանել նրա լյարդն ու դնել բերանը. ապա խրեց դանակը նրա կոկորդն ու թողեց այդպես ցցված [կոկորդում]: Բայց մինչդեռ նրա թլպատն էլ (առնանդամը) կկտրեր, ասաց.*

*– Տուր խոստման գիր և պատվեր Ապահունիքում գտնվող պարսից զինվորներին և ես կյանքդ քեզ կբաշխեմ: Իսկ նա խոստումնագիր տվեց և պատվերներ՝ բազմապիսի խոստումներով կնքված, այն մասին, որ իրենք երկուսը միայն գիտեին: Եվ երբ ամբողջապես կատարեց նրա պահանջը, Վահանը կտրեց նրա գլուխը: Ծառաները հավաքեցին նրա արյունոտ զգեստները, պահեցին և գետինն էլ արյունից լվացին, մաքրեցին: Այնուհետև մարմինը պառկեցնելով մահճում՝ ծածկեցին, որպես թե քնած է: Ապա ինքն անձամբ դուրս գալով՝ ներս կանչեց Միհրանի պարսիկ գրագրին, գրել տվեց նրան ողջույնի գիր և հետևյալ նշանաբանը, թե՝ երկու օրից ետ, հազար մարդով միայն, բարձրացիր Կոթ [կոչված] ձորի մոտի բլուրը, որպեսզի տեսնենք միմյանց: Դպիրը գրեց նույնությամբ, ինչ որ Վահանն ասաց, Միհրանի մատանիով կնքեց այն, ապա կանչելով հավատարիմ մարդկանցից հիսուն հոգի, պատվիրեց տանել Վաչիրին, որ Ապահունիքում էր և իր ձեռքի տակ հազար մարդ ուներ: [Սրանք] թուղթն առան ու գնացին:*

Իսկ Վահանը կանչելով պատվիրակին կարգադրեց, թե գնա և կանչիր այսինչ անունով իշխանին: Նա գնաց և կանչեց: Եվ երբ իշխանը եկավ մտավ խավարչտին փողանը (միջանցքը), որտեղ երկու կողմերից վեց մարդ պատրաստ թաքնված կային, ու ցանկանում էր մտնել [Միհրանի] օթևանը, անմիջապես բռնեցին նրա կոկորդից, որպեսզի չլինի, թե մյուսները նրա ձայնը լսեն, ապա դանակը նրա սիրտը խրելով՝ մյուս հարկը նետեցին: Եվ այս ամենն արեց նրա համար, որ պատվիրակին ու գրագրին մեղադրելով՝ բանտ տանել չտար: Իսկ ինքը խաբեությամբ իշխաններին խորհրդի կանչել տվեց և իր մտադրությունը թաքցնելով՝ նրանց հետ էլ նույն ձևով վարվեց:

Այդպես ութսունվեց իշխանների միայն այդ օրը սպանել տվեց: Իսկ երբ իշխանների հետ գործն ավարտվեց, ելավ գնաց տաճարը, որտեղ զորքերն էին խմբված, կիտված: Այստեղ և՛ յուրային, և՛ օտար գավառների մարդկանց տաճարից հանել հրամայեց և ինքը սկսեց անարգական խոսքերով հանդիմանել նրանց՝ թե վայել է ձեզ, արդյո՞ք, ձեր մարգպանի մարգարտյա պսակը գողանալ: Արդ, կարգադրված է բոլորիդ այստեղ մերկացնել, մինչև խոստովանեք և ի ցույց հանեք: Եվ նրանց զգեստները հանել տալով՝ բոլորին այնտեղ տաճարում փակել տվեց: Նույնպես վարվեց նաև մյուս տաճարում գտնվող հազար ինը հարյուր և երեք (ՌՋԳ) մարդկանց հետ: Ապա հրամայեց փակել տաճարների դռները, բերել տվեց Միհրանի գլուխը, կախեց երդիկն ի վայր և ցույց տալով նրան՝ ասաց.– Սա այն գլուխն է, որը խորհում էր Սուրբ Կարապետը հիմն ի վեր կործանել և բոլոր կրոնավորներին հրով այրել:

Ապա հրամայեց երկու տաճարներն էլ կրակի տալ և դառնալով նրանց ասաց.

– Դուք ինձ չափազանց մեծ վնաս տվիք, պատճառ եղաք, որ ես այս Սուրբ տաճարները այրել տվի: Բայց քանի որ մեր [հայր] Աստվածն ու Սուրբ Կարապետն են այդպես ցանկանում, ես այս փայտը, որ զղջման համար էի թողել, բայց, ահավասիկ, ձեզ հետ, նույնպես և ձեր զորավարի հետ միասին կառափն եմ հանում: Ես մեծ աշխատությամբ, չարչարանքով եմ այն պատրաստել, բայց դուք մերկ եք և ցրտահար, ուստի՝ հանուն իմ բազում մեղքերի թողության և հանուն իմ անցավորաց (հայրերի) հիշատակի, այսօր մի լավ տաքացեք և բոլորովին մի ամաչեք: Այս սուրբ տներն էլ թող ձեզ գերեզման լինեն՝ չնորհոքն արքային պարսից: Եվ բորբոքվեց մարդկային ճարպով առատ[ացած] կրակի բոցը. մինչև իսկ ամբողջ քաղաքն արբեցավ նրանց ճենճերի հոտից: Իսկ ինքը հավաքել տվեց նրանց ամբողջ

*ինչքն ու գանձերը և հրամայեց տանել Ողական ամրոցը։ Ապա՝ Մուշեղը հանձնարարեց, որպեսզի իշխաններին տանեն քաղաքը։*

*Այնուհետև Վահանը երեք հազար մարդ իր հետ առնելով գնաց Վաշիրին ընդառաջ, բարձրացավ լեռան վրա և երեք կողմից դարան պատրաստեց։ Ապա նվիրակին ու դպիրին առաքեց Վաշիրին իր մոտ հրավիրելու։ Նրանք գնացին հայտնեցին Վահանի պատվերը Վաշիրին, որն իջևանել էր [արդեն] Նիա ծովի[7] եզերքը։ Բայց դպիրն ու նվիրակը եղելությունից ոչինչ տեղյակ չէին, քանզի Վահանը թույլ չէր տվել նրանց մոտենալու զորքին, այլ պահել էր ետևում մեկուսացված։ Այն ժամանակ էլ, երբ տաճարներն այրել տվեց, նրանց այլ պատրվակով ուրիշ տեղ ուղարկեց, որպեսզի չիմանան, թե ինչ է կատարվել։ Իշխանների զգեստն ու հանդերձանքն էլ տեսնելով՝ կարծում էին, թե միհրանյանք են։ Արդ, գնացին նրանք և Վահանի պատվերը հայտնեցին Վաշիրին՝ որպես թե Միհրանի կողմից են ուղարկվել, և Վաշիրը վերցնելով հազար հարյուր մարդ, եկավ բարձրացավ նույն լեռը։ Երբ մոտեցան այն տեղին, որ Վահանն էր, Վաշիրը հիսուն զինվոր առանձնացրեց և ազատ արձակեց, այլ թշնամիներից ապահով լինելու համար, իսկ ինքը եկավ մտավ վրանը՝ Վահանի մոտ, կարծելով, թե Միհրանն է։ Երբ տեսավ Վահանը նրան, ասաց.– Վաշիր, միտքդ ի՞նչ է, պարսից հավատի՞ն եք ցանկանում դարձնել Հայոց երկիրը...*

*Նախ հրամայեց զորքերին պատշաճ տարածություն հեռու պահել, ապա սկսեց գանահարել Վաշիրին այնքան, մինչև խոստացավ իր բոլոր զորքին այնտեղ կանչել։ Հարվածների սաստիկ ցավից [Վաշիրը] հրաման ուղարկեց իշխաններին և զորապետներին շտապ իր մոտ գնալու։ Պարսիկ գրագրին էլ կաշառք խոստանալով՝ [Վահանը] հրամանն այնպես գրել տվեց, որ շուտափույթ գան, որպես թե հույները հանկարծակի մեզ վրա են հարձակվել։ Եվ Վաշիրի մատանին էլ տալով [նրանց], ուղարկեց հեռվում թողնված զորքերի մոտ։ Ապա հրավերք հղեց թիկունքում եղած զորքին, և կոչունքի պատրվակով իշխաններին մեկ-մեկ խորանն էին տանում ու գլխատում։ Եվ ոչ-ոք չիմացավ եղելությունն այնքան ժամանակ, մինչև որ [նրանցից] մեկը մազապուրծ փախստական իր բանակը հասավ։ Բայց երբ Վահանը հասկացավ, որ կատարվածը հայտնի դարձավ, դարանամուտ մարդկանց լուր ուղարկեց՝ հետևի կողմից հարձակվել նրանց վրա։ Եվ փախցրին նրանց մինչև Կոթի ձորաբերանի բերդը։ Դարանամուտներից ամենավերջինները նույնիսկ ընդհարվեցին նրանց հետ, բերդի մարդիկն էլ ներսի կողմից դուրս գալով նրանց դեմ՝ քարերով ու*

*գլերով բոլորին անխնա կոտորեցին: Հարյուր մարդ միայն փախստական եղած հասան մինչև Ապահունիք, սակայն դարան մտածները նկատեցին, հարձակվեցին և սրանց էլ ձերբակալեցին:*

*Իսկ վաղ առավոտյան պարսից մյուս զորքն էլ եկավ հասավ այնտեղ՝ բլրի այս կողմը: Վահանն ընդառաջ եկավ նրանց ու ասաց.– Ամենքդ էլ իջեք ձիերից, թող երիվարներն արածեն մինչև երեկո, որովհետև մութն ընկնելուն պես պետք է հարձակվենք հունաց զորքի վրա:*

*Այդպես էլ արեցին: Դարան մտածները թաքստոցներից դիմեցին նրանց կողմը, ձիերի երամակն անջատեցին զորքից, քշեցին Արածանիի կողմերը, հանեցին մինչև Քարքե լեռան բարձունքները: Իսկ պարսից զորքերը հասկանալով իրենց գլխին եկած աղետը՝ միաբերան աղաղակում էին.*

*– Վայ մեզ, կորած ենք: Այստեղից էլ գավառի անունը մնաց Կորեանք լեռներ: Իսկ Վահանի զորքերը մնացածներին քշեցին իջեցրին հենց այդտեղի ձորը, ուր դարանամուտ զինվորներն էին և երկու կողմից հարձակվեցին, նրանց մեջտեղն առան, բոլորին կոտորեցին և առհասարակ ոչ մեկին չխղճացին: Միայն քառասուն մարդ [Վահանը] հրամայեց կենդանի թողնել՝ որպես զրուցատար (գուժկան) պարսից արքային: Հանձնարարեց տանել թագավորին նաև Միհրանի գլուխը՝ այսպես պատվիրելով.*

*– Այս մարդը, երբ մարզպան եկավ մեր երկիրը, այնժամ զորքերը դեմ առ դեմ ախոյան կանգնելով՝ խաղագնդակ էին ուզում, բայց չկարողացանք գտնել: Հույներից էլ չհամարձակվեցինք գնալ խնդրել, որովհետև ձեր ոխերիմ թշնամիներն են: Ձեր զորքի մոտ էլ աչքի անցկացրինք, հեռվից տեսանք, որ ձերոնց մոտ նույնպես գնդակ չկար: Ստիպված կտրեցինք այս գլուխն ու խաղացինք: Արդ, իմացանք, որ Շահաստանից եկել եք Բուստր քաղաքը, որը երկիր է տափարակ ու դաշտաձև: Գիտենք, որ գնդակ պիտի խաղաք. ահավասիկ, վերցրեք ձեր քրոջ որդու գլուխը և թող ձեզ խաղագնդակ լինի սերնդից-սերունդ:*

*Երբ այն քառասուն մարդիկ գնացին և Միհրանի գլուխը տարան թագավորի առջևը դրին, սաստիկ վրդովվեց ու խորին ամոթանքից պապանձվեց [պարսից արքան]:*

*Այդ նույն տարին էր, որ Տարոնի իշխան Մուշեղը վախճանվեց: Նրա դին ամփոփեցին Սուրբ Կարապետ վանքի արևելյան ճակատամասում:*

*Մուշեղի մահից հետո նրա իշխանական աթոռին նստեց Մամիկոնյան տան իշխան Վահանը:*

## *ՎԱԽԹԱՆԳԻ ՏԱՐՈՆ ԳԱԼԸ ԵՐԵՍՈՒՆ ՀԱԶԱՐՈՎ ԵՎ ՊՈՐՊ ՔԱՂԱՔՆ ՈՒ ԳԱՀԱՐ ԱՄՐՈՑԸ ԿԱՌՈՒՑԵԼԸ*

*Պարսից թագավորը երկրորդ անգամ երբ չարժվեց գնաց հույների դեմ, այնժամ մտաբերեց Միհրանին՝ իր քրոջ որդու մահը և նրա հորեղբայր Վախթանգ զորավարին երեսուն հազար ընտիր հեծելազորով ուղարկեց Հայոց երկիրը՝ Տարոն: Սա եկավ հասավ Ապահունիք, նստեց այնտեղ և հարկահավաքներ ուղարկեց Հարք, Հաշտենք և Մուշ գավառներն ու պահանջեց նրանցից արքունական հարկերը: Ապա Վախթանգը խրոխտաբար հոխորտալով՝ կողմնապահներ է թողնում Ապահունյաց երկրում և սաստիկ բարկությունից կատաղած, գալիս հասնում է Տարոնի բարձունքին [որ Տարոնի գլուխ է կոչվում]: Գալով այնտեղ տեսնում է, որ մի ընդարձակ ու խիստ վայելուչ և [հարմարավետ] դաշտավայր է. սկսեց այնտեղ քաղաք կառուցել, այգիներ ու բուրաստաններ տնկել: Վերաշինել տվեց Ձյուն[ա]կերտ մեծ քաղաքը[8], Պարսկաստանից իր կնոջը՝ Պորպե[ս]ին բերել տվեց այնտեղ և նրա անունով էլ քաղաքը վերակոչեց Պորպե, որ մեր լեզվով համեղ է նշանակում: Եվ մատուռի դռանը, որ Սահակ Մեծ Պարթևի ձեռքով էր հիմնադրված, պարսկական ատրուշան հաստատել տվեց: Այնուհետև բարձրացավ Տավրոս լեռան վրա, կառուցել տվեց այնտեղ մի մեծ ամրոց և կոչեց Գահար, որովհետև [նրանցից] շատերը՝ վայրի գազաններից սարսափահար, այնտեղ գահավեժ եղան, կարծելով թե հեծյալներ են: Ապա Գ[ո]ռող լեռնաբլրի վրա մի ավան կառուցել տվեց իր Գոեգուոս որդու անունով և կոչեց այն Գոգոս[9]:*

*Դրանից հետո [Վախթանգը] սուրհանդակ հղեց Վահանի մոտ և այսպես ասաց.*

*– Քաջաբազուկ և հզոր Վահան հսկային՝ դիցն օգնականությամբ, ողջույն... Թեև իմ եղբորորդու մահվան համար շատ տրտմեցինք, սակայն հույժ զարմացած ենք ձերդ մեծության իմաստությունը տեսնելով: Ահավասիկ, ես եկել եմ հանուն սիրո. եկ ինձ մոտ և խոստացիր երդմամբ տալ տերունական հարկը, նաև հնազանդ լինել արքային [պարսից], նրա նկատմամբ չարիք չխորհել. և ես կյանքդ քեզ կբաշխեմ, թույլ կտամ հայոց մեծ իշխանի այդ փառքդ պատվով վայելես: Ողջ եղի՛ր, դիցն օգնականությամբ...*

*Այնժամ Վահանը պատասխանեց և այսպես ասաց.*

*– Վախթանգիդ՝ վախկոտ ու տմարդի, ամենուրեք աղբ ճաշակող խոճկորների ցեղից սերված, քեզ ողջույն: Թեև Միհրանիդ մահվամբ*

*չատ խնդացինք, բայց նույնպես էլ քո անմտությանդ վրա լաց եղանք, որովհետև նրա մահվան բոթը լսեցիր, ապա նոր միայն ճանաչեցիր իմ բազկի զորությունը, որ Աստծո կողմից է շնորհված ինձ: Եթե սիրով ու բարեկամությամբ ես եկել [մեզ մոտ], ապա կնոջդ ինչո՞ւ բերեցիր: Մի՞թե արու զավակներ ես ցանկանում ունենալ մեր տղամարդկանցից: Կամ թե իրո՞ք սիրո պատճառով եկար, իմ այդ քաղաքն ու բերդը ինչո՞ւ վերակառուցեցիր: Սակայն գիտեմ, որ խոսքդ սուտ, չնաբերան ես և վայրահաչ [խածնող]: Ինքնակամ կյանքդ մահվան ես դատապարտել: Լսիր խոսքս, դուրս եկ մեր երկրից և գնա խաղաղությամբ. ապա թե ոչ՝ մահը, որով պիտի քեզ սատակեցնեմ, աշխարհն ամբողջ տեսնելով [կզարհուրի]:*

*Բայց նա՝ [Վախթանգը] զայրացած նրա վրա, Մուշ քաղաքն է ուղարկում վեց հազար զինվոր: Այնժամ Վահանին տեղեկացրին, թե Ռահանը վեց հազարով քեզ վրա է գալիս: Նա էլ գիշերով շարժվեց գնաց մինչև Ծծմակոտ աղբյուրը, ուր եկել և իջևանել էին: Եվ հանկարծակի՝ սրերի բերանն առած, կոտորեցին նրանց: Չկարողացան [նրանք] նույնիսկ իրենց ձիերին մոտենալ, քանի որ Վահանի որդի Սմբատը մեջտեղից արշավելով, անջատեց զորքերից չորս հազար երիվարներն ու անցկացրեց Արածանիից այն կողմ՝ Հաշտենից գավառը:*

*Երկու հարյուր ընտիր նժույգներ էլ՝ իբրև նշան առաջին հաղթության, ավարամաս ուղարկեց Սուրբ Կարապետին, նաև իբրև երախայրիք՝ քանզի ինքն այնտեղ էր մկրտություն ստացել: Իսկ Վահանը [պարսիկներին] քշեց դեպի մորուտները, մեծ մասին սրախողխող արեցին. երկու հարյուր հոգու էլ [նրանցից] մերկացրին ու չամբուտների մեջ ընկղմեցին:*

*Այդ ժամանակ Հաշտենից իշխանն իր ձեռքի տակ ուներ վեց հարյուր զինվոր, Պալունյաց իշխանը՝ երկու հազար և երկու հարյուր, Արջուց իշխանը՝ չորս հազար, Ողնուտի իշխանը՝ հինգ հազար և ինքը՝ Վահանը՝ ութ հազար: Նրա որդի Սմբատն էլ տասը հազար զինվոր ուներ. բոլորը միասին՝ քսանութ հազար*[10]*:*

*Այս բոլոր զորքերը ենթարկվում էին Վահանին, սակայն բաժանել էր և ամեն կողմերում էլ սահմանապահ զորք թողել: Այդ նույն օրը նրա մոտ կար միայն երեք հազար զինվոր:*

*Եվ բազում նախճիր գործեց այնտեղ Հաշտենից իշխանը. աճապարանքով կտրեց Ռահանի գլուխը, իսկ նրա զորքին փախուստի մատնելով՝ չատ խիստ նեղեցին: Ուստի ետ դարձան [նրանք] և աղաչեցին իրենց կյանքը խնայել և խոստացան [իրենք] հարկ վճարել: Բայց Վահանն այսպես ասավ նրանց.*

*— Հանձնեք մեզ Ռահանի գլուխը և մենք ձեզ ազատ կարձակենք: Այնժամ նրանք տարակուսած՝ այդ վիճակից ելք էին փնտրում և չէին կարողանում գտնել, որովհետև փնտրում էին իրենց մեջ Ռահանի գլուխը, բայց չկար: Ուստի բերեցին Ռահանի որդի Վահէին և հանձնեցին Վահանին: Այդ ժամանակ Հաշտենից իշխանը՝ ինքն առաջ եկավ և ասաց նրանց,— կամ Ռահանի գլուխը տվեք մեզ, կամ երեսուն հազար դահեկան:*

*Նրանք էլ բերին տվին երեսուն հազար դահեկանն ու ազատ գնացին: Սակայն, երբ Վահանը նայեց ու տեսավ, որ բոլորն ազատ գնում են, աստվածային նախանձախնդրությամբ ու չարությամբ լցվեց նրանց հանդեպ. հարձակվեցին նրանց վրա ու սկսեցին անխնա կոտորել: Իսկ նրանք վայնասուն բարձրացնելով գոչում էին,— Առ ի՞նչ պատերազմ եք բորբոքում, ով զազրախոսներ: Իսկ այդ տեղն էլ անվամբ Առինչ կոչվեց: Մնացածներին էլ այնտեղ հարթավայրում սփռելով՝ սաստիկ կոտորած գործեցին: Նրանք էլ, որ փախան-ազատվեցին, հինգ-վեց հարյուր հոգի հազիվ թե լինեին: Սրանք գնացին և եղածը մի առ մի պատմեցին Վախթանգին: Նա էլ զայրացած հրամայեց գլխատել բոլոր նրանց, որ կենդանի վերադարձան: Եվ այնտեղ եղած վեց հազարից ոչ մեկն էլ չմնաց:*



**Գայլ Վահան**

*Այնժամ Վախթանգի զայրույթն ու ցասումը դարձավ Վահանի դեմ: Այս անգամ նրա դեմ ուղարկեց Աշուրին՝ ութ հազարանոց մի բանակով: Նրանք եկան, բանակ դրին Մեղտի գետի ափին և պատգամաբեր ուղարկեցին Վահանի մոտ. և պատգամաբերն այսպես [խոսեց].*

*— Ո՛վ դու, չարաբարո Գայլ Վահան, մի՞թե չես գիտակցում, որ ծառա և [հարկատու] ես Արյաց արքային, ինչո՞ւ այդ աստիճան անամոթաբար հանդգնում ես: Եկ, ասում եմ քեզ, մեղմացրու բարքդ, խոնարհաբար հարկդ վճարիր, ապա թե ոչ, չար մահով պիտի մեռնես:*

*Վահանը՝ լսելով այդ խոսքերը, վերցրեց վեց հազար մարդ և իր Սմբատ որդու հետ միասին գնաց պատերազմի:*

*Երբ գնացին հասան ու բանակ դրին միմյանց հանդեպ, այնժամ Ասուրը սկսեց բորբոքել Վահանի զայրույթը՝ նրան Գայլ անվանելով: Իսկ նա պատասխանեց.*

*– Իրավի է, որ այդ անունն ես տալիս ինձ, քանզի գալիս եմ չարունակ կոտորում, գնում և դարձյալ գալիս: Ապա սկսեցին մարտնչել միմյանց դեմ: Պատերազմը երբ թեժացավ, Վահանի որդի Սմբատը միշտ աչքն Ասուրի վրա էր պահում, և հանդիպեցին իրար: Բայց Ասուրը նկատելով, որ իր առջև կանգնածը մի պատանի է, քամահրեց նրան այսպես.*

*– Քարապաշտ հարճորդի, հեռու քաշվի՛ր դեմիցս, որպեսզի ես իսկական տղամարդկանց հետ մենամարտեմ: Իսկ Սմբատը պատասխանեց.*

*– Դու ծնունդ ես սատանայի և հիրավի են քեզ Ասուր կոչում, քանզի սուրդ ոչինչ է, և հենց հիմա կտրիճիս հետ ուժդ փորձելով՝ կճանաչես քո կնամարդի լինելը: Եվ այս ասելով՝ նետվեց դեպի նա. նախ կտրեց Ասուրի ձիու գլուխը, գետին տապալեց նրան, ապա սուրը ճոճելով հարձակվեց նրա վրա, կտրեց նրա գլուխն ու վեր բարձրացնելով ասաց.*

*– Փա՜ռք քեզ, Քրիստոս, փառք, փա՜ռք քեզ Սուրբ Կարապետ, որ զորավիգ եղար կործանելու թշնամուս: Եվ մինչդեռ նա խոսում էր այդպես, ինը հոգի թշնամիներից շրջապատել էին Վահանին՝ նրա հորը, և ինչպես անտառի կաղնուն, անխնա տապարահարում էին: Այնժամ Վահանը սկսեց թուլանալ և ձայնը բարձրացնելով որդուն կանչել.*

*– Ո՞ւր ես, որդյակ իմ՝ Սմբատ, հասիր օգնության. քանզի նա այդ ժամանակ ութսուն և ութ տարեկան էր: Բայց այդ միջոցին Սմբատը քաջաբար առաջ նետվելով գոչեց.– Զորավիգ լե՛ր մեզ, ով Սուրբ Կարապետ: Եվ այն կողմից, ինչպես արծիվ սրաթռիչք, դեպի նա սուրաց, մի հարվածով կտրեց Ասուրի որդու գլուխը թիկնախառն ու գետին տապալեց. մյուսներին էլ այս ու այն կողմ ցրիվ տալով՝ իր հորը փրկեց:*

*Այնժամ զորացավ Վահանը, ոգևորված առաջ արշավեց. և որովհետև Տերը նրանց ձեռքը մատնեց պարսկական զորքին, մինչև արևամուտ կոտորած արին ու [մյուսներին էլ] հալածական դարձրին: Եվ այսպես ութ հազարից երեք հազարը միայն կենդանի Վախթանգի մոտ հասան, որը տեսնելով այդ՝ լուռ ու մունջ մնաց և մինչև հաջորդ*

*տարին ոչինչ չձեռնարկեց: Այս նույն տարին[11] վախճանվեց քաջ Վահանը՝ [Հայոց] եկեղեցու նախանձախնդիր վրիժառուն: Ապա կարգադրեցին տանել նրա դին Գլակա վանքն, ուր և կա թաղված՝ Սուրբ Կարապետի դռան մոտ:*

*Հաջորդ տարի Վախթանգը քսան հազար զորք գումարեց և ուղարկեց Սմբատի դեմ՝ այս պահանջով, թե եկ կամ պատերազմենք, կամ հնազանդվիր ու մեզ հարկատու դարձիր: Իսկ նա (Սմբատը) ինը հազարանոց մի բանակ կազմեց և դուրս եկավ նրա դեմ պատերազմի. գնաց հասավ մինչև Անտաք[12]:*

*Հինգ հազարը թողեց այն բլրի վրա, որը Մահվան ագարակ է կոչվում և ինքը մնացածով ելավ գնաց նրա դեմ՝ նրան գրգռելու մտքով: Վախթանգն էլ կարծեց, թե բոլորը [այդքանն] են միայն և նրանց դեմ ուղարկեց ընդամենը ինը հազար հոգի: Զորքերը գիշերով եկան և շրջապատեցին նրանց: Եվ նա (Սմբատը) կամեցավ [հենց այդ գիշեր] հարձակվել նրանց վրա, սակայն իր մոտ գտնվող քահանաներն արգելեցին, բայց նա չլսեց: – Ես վստահ եմ Աստծու կողմից, ասաց, որովհետև միամտությամբ, [անկեղծ հոգով] ենք հավատացել ու ծառայել Սուրբ Կարապետին, ուստի նա մեզ աչքաթող չի անի: Եվ գիշերվա կեսին ջահերով դուրս եկան ու հարձակվեցին պարսից զորքի վրա: Այստեղ հանկարծակի երևաց մի սպիտակափառ հերավոր ծերունի, որի մազերից լույս էր ճառագում և մոտենալով քաջ Սմբատին ասաց.*

*– Քաջալերվեցե՛ք, որդյակ իմ և մի երկնչեք, քանզի Սուրբ Կարապետն է մեր թիկունքում պատրաստ կանգնած և ինքն է պատերազմում մեզ հետ միասին: Եվ այս իրողությունը ոչ մեկին թող անհավատալի չթվա, քանի որ նրանք (թշնամիները), սկսել էին միմյանց դեմ մարտնչել և միմյանց կոտորել: Այդ մեր Տերն ինքն էր նրանց դեմ պատերազմում: Եվ այնքան շատ կոտորվեցին այնտեղ, որ արյան հեղեղներ գոյացան, ուստի և այդտեղն էլ Թիլ կոչվեցավ: Իսկ երբ ավարտեցին վերջացրին կոտորածի գործը՝ այդ ամբողջ բազմության, երկու հարյուր մարդ միայն կենդանի թողեցին, որպեսզի ուրիշներին զրուցատար լինեն գիշերը երևացած այն մարդու մասին, որովհետև իրենք՝ թշնամիներն էլ տեսան նրան: Իսկ ինքը [Սմբատը] առնելով ձիերի ամբողջ երամակն ուղարկեց Մուշ, իր որդուն (սա իր մորական պապի անունով Վահան Կամսարական էր կոչվում), որպեսզի քաղաքի ողջ հետևակ զինվորներին շուտափույթ հեծյալ դարձնի: Եվ նա կազմեց մի հեծյալ գունդ՝ երկու հազար հինգ հարյուր հոգի և դուրս բերելով ուղարկեց Սմբատ իշխանի մոտ: [Սմբատը] ութ օր շարունակ*

*խույս էր տալիս և իր զորքն էր կազմում ու դասավորում: Ութ օրից հետո Վախթանգը եկավ հասավ այնտեղ՝ պատերազմի դաշտը. և վաղ առավոտյան պատրաստվեցին ճակատամարտի:*

*Այստեղ Սմբատը երկու հազար հեծյալ զինվորներ անջատեց զորքից և գիշերով գաղտնի անցկացրեց պարսիկների թիկունքը՝ նախապես պատրաստած թաքստոցը: Երկու հազար էլ անցկացրեց բլրի հակառակ կողմը. և այսպես երկու կողմերից գաղտնի բանակներ կազմեց ու պատրաստ պահում էր: Ապա ինքը մնացած ութ հազարն առանձին ճակատների բաժանելով՝ դասավորեց մինչև լուսաբաց, որպեսզի գաղտնի դարանի մասին ոչինչ չհասկացվի և վաղ առավոտյան փութանակի ուղիղ թշնամու վրա շարժվեց:*

*Երբ սկսեցին պատերազմել միմյանց դեմ, սկզբում հաղթությունը կարծես նրանց [պարսիկների] կողմն էր թեքվում և [խիստ] նեղեցին Սմբատին: Այնժամ Սմբատը բարձրացավ լեռան կատարը և կանչեց ինչպես առյուծ. «Ո՞ւր եք, իմ քաջեր, հապա՛, առա՛ջ եկե՛ք»: Զորքերը լսելով՝ ամեն կողմից դուրս թափվեցին ու հարձակվելով՝ բոլոր կողմերից շրջապատեցին պարսից բանակը: Եվ այնպես խառնվեց ու բորբոքվեց ճակատամարտը, որ նույնիսկ իրար ճանաչելն անհնարին դարձավ. միայն փողերի ձայնից և դրոշների տեսքից էին տարբերում միմյանց:*

*Բայց ահա, երբ միմյանց դեմ դուրս եկան Վախթանգն ու Սմբատը, Վախթանգն ասաց.– Կանգնի՛ր, հարճորդի, թեպետ և շատ-շատերի ջնջեցիր, այսօր, սակայն, իմ քաջերի ձեռքից քեզ պրծում չկա. մեր սրերը պիտի կտոր-կտոր պառատեն ձեզ բոլորիդ: Իսկ Սմբատը հարձակվելով՝ խփեց կտրեց նրա ազդրի սռնապանը, խոցեց նրան ուժգին և կամենում էր գետին տապալել: Բայց Վախթանգը հասցրեց տեգով հարվածել նրա կրծքին, որը ցցվեց նրա լանջապանի մեջ, բայց ներս չթափանցեց:*

*Այնժամ Սմբատը ձայնը բարձրացնելով՝ գոչեց.*

*– Ով Սուրբ Կարապետ, այսօր էլ ցույց տուր զորությունդ ծառաներին քո, քանզի հանուն քո և քեզ հավատարիմ երկրպագողների ենք նահատակվում: Եվ տեգով ուժգին հարվածեց Վախթանգի թիկունքին, պատռեց [երկաթյա] զրահը և սրտի մեջ մխրճելով՝ մյուս կողմից դուրս բերեց. ապա հանեց սուրը, թափով խփեց կտրեց Վախթանգի գլուխը, սակայն բռնել չհասցրեց, քանզի բազմաթիվ մարդկանց վրայով այն կողմ թռավ [գլուխը]: Այդ միջոցին Վախթանգի ծառաներից մեկը վերցրեց գլուխն ու սկսեց փախչել: Սմբատը հասավ նրա ետևից ու մուրճով հարվածեց նրա գագաթին. սաղա-*

*վարտը գոգվեց և գանգի ոսկորը ներսից պատռվեց: Մուրճն այնպես խորը մտավ սաղավարտի մեջ, որ հազիվ կարողացավ քաշել հանել: Նա էլ գլուխը նետեց ու ինքն ընկավ մեռավ: Վախթանգի ծառաներից մեկ ուրիշը գետնից վերցրեց գլուխն ու սկսեց փախչել:*

*Իսկ Սմբատը հետապնդելով նրան ասաց.– Ով անմիտ պարսիկներ, չտեսա՞ք, թե ինչպիսի մահով կործանվեց ձեր զորապետ Վախթանգը: Իսկ դուք, որ այդպես հավատարիմ ծառաներ եք՝ նրա գլուխն առնելով փախչում եք, իմացե՛ք, որ այդպես պարտավոր եք լինել... Եվ ծառան [սարսափահար] ետ դարձավ, նետեց գլուխը Սմբատի կրծքին ու ասաց.*

*– Տա՛ր, խորովի ու կե՛ր: Բայց վայ ձեզ, որ վաղն այլևս չկա, որ սպանեք: Իսկ Սմբատը գլուխն առնելով՝ հետապնդեց պարսիկին, հասավ ու ասաց.– Այ տիրատյաց պարսիկ, ինչո՞ւ քո գլուխը չես տալիս քո տիրոջ գլխի փոխարեն: Արդ, քանի որ այդպես տիրատյաց եք, ուստի ես կհեռացնեմ այդ գլուխը քո վրայից: Այդպես ասելով՝ խփեց կտրեց նրա գլուխն ու նետեց ցած, ապա մեծավ հաղթությամբ վերադարձան բլուրը: Զորքերն էլ շրջապատելով պարսիկներին, բոլորին կոտորեցին ու նույն տեղում վայր թափեցին, և ոչ մեկը նրանցից կենդանի չմնաց, բացի այն չորս հարյուր հոգուց, որոնք ուղտապաններ էին: Նրանց հրամայեց չսպանել, այլ վերցրեց նրանցից հազար քառասունչորս ուղտ և ութ հազար ձի ու ջորի:*

*Իսկ երբ ավարտվեց պատերազմը, հրամայեց նրանց դիակները լցնել ձորերն ու հեղեղատները. և բլրի անունն էլ կոչեցին Մահու բլուր: Ապա Սմբատն առավ իր զորքն ու գիշերով ելավ գնաց Պորպ քաղաքի վրա: Զինվորները գիշերով մտնում էին տները, որ տանը պարսից լեզվով խոսող էին գտնում՝ սպանում էին անխտիր:*

*Եվ ապա բոլորի քթերը կտրեցին և լարի վրա շարելով՝ բերին Սմբատի առջևը դրին: Համրեցին քթերն ու տեսան, որ բոլորը քսանչորս հազար էին՝ մարդ, կին և երեխա: Իսկ Վախթանգի կնոջն ու որդուն առան տարան Այծից բերդն ու պահեցին այնտեղ: Ապա լուր ուղարկեց [Սմբատը] պարսից Խոսրով թագավորին ու ասաց.*

*– Կամ հինգ տարվա հարկը կտաս ինձ, քանի որ զորքդ ու [նրանց անասունները] իմ երկրի հացն ու խոտը կերան, և՛ փայտի արժեքը, որ իբրև վառելիք օգտագործեցին, և՛ ջրինը, որ խմեցին, և՛ այն տաճարների գինը, որ իմ հայր Վահանն այրեց քո զինվորների պատճառով, և՛ օճառի գինը՝ հիսուն հազար դահեկան, որով քո զորքերի գիշահոտ ու արյունթաթախ զգեստները լվանալ տվեցինք ու հագանք: Ապա թե ոչ՝ գամ հարյուր մարդով քո վրա և ամբողջ Պարսկաստանը*

*գերեվարեմ բերեմ Տարոնում լցնեմ, և քո այդ կուռքերի տեղն էլ բերեմ շներին կապեմ, որ դրանց փոխարեն ձեզ համար հաչեն: Արդ, ինչ որ ասացի, բոլորը շուտափույթ ուղարկի, իսկ եթե ոչ՝ կտեսնես ինչ եմ բերելու քո գլխին: Խոսրով արքան, սակայն պատասխան չտվեց: Այն ժամանակ Վախթանգի եղբայր Սուրենն առավ հարյուր հազար դահեկան, ինը հազար էլ մարդ իր հետ վերցնելով՝ եկավ Տարոն, որպեսզի փրկագին տա և ազատի իր եղբոր կնոջն ու որդուն: Սմբատն ընդառաջ գնաց Սուրենին, սիրով ընդունեց նրան և առավ տարավ Մուշ:*

*Տասն օր այնտեղ մնալուց հետո Սուրենը խոսք բաց արեց իր եղբոր որդու մասին, թե որտե՞ղ է: Իսկ նրանք ցույց տվեցին բերդն ու ասացին, թե՝ այնտեղ է: Եվ նա հարցրեց.– Ի՞նչ է անում, այծարա՞ծ է այնտեղ, թե դիվարած: Սմբատը ծիծաղեց Սուրենի աղի [սրամիտ] խոսքի վրա և հրամայեց [Վախթանգի] կնոջն ու որդուն բերել նրա առջև: Երբ բերին, եկան, Սուրենը դառնալով Սմբատին ասաց.– Ով հզոր իշխան Հայոց աշխարհի, այս կնոջն ու նրա որդուն շնորհ արա պարսից արքային: Բայց Սմբատը պատասխանեց և ասաց.*

*— Պարսից արքային մի սատկած շուն անգամ իբրև շնորհ [անվճար] չեմ տա, որ տանի ճաշ պատրաստի և ուտի, թող թե դրանց տամ: Բայց քեզ կտամ, եթե գնել ես ցանկանում, ապա թե՝ ոչ, երեքդ էլ գնացեք Արծրունիք և այնտեղ այծեր արածացրեք: Սուրենը, սակայն, քանզի իմաստուն մարդ էր, խոհեմաբար ասաց.– Ով բարեպաշտ իշխան, ոչ թե այծերիդ, այլ եթե դռանդ շներին անգամ մեզ արածացնել տայիր, դարձյալ փառք ու պարծանք էր մեզ համար, քանի որ քո դռանն ենք: Իսկ եթե կամենում ես լսել ինձ՝ ահավասիկ, վերցրեք այս հարյուր հազար դահեկանը, երկու հազար ուղտերն ու հինգ հազար պարսկական նժույգները և շնորհ արեք մեզ հանձնել այդ կնոջն ու իր որդուն:*

*Այնժամ իշխանը պատասխանեց.– Այդ բոլորը, ինչ այստեղ ես բերել, իմն է. քո գլուխն էլ կարող եմ ուսերիցդ վերացնել և ինչ ունես, բոլորն էլ գրավել: Բայց եթե [սրանք] քեզ համար թանկ են, ապա ինքդ քրիստոնյա դարձիր և ինձ էլ մի [հնարով] պարսիկների մոտ տար, և դրանք էլ թող քեզ լինեն: Հապա թե ոչ՝ այնժամ ինքներդ ձեր գլխի ճարը տեսեք: Իսկ Սուրենը նրա առջևը բերել տվեց հարյուր հազար դահեկանը, ուղտերն ու ձիերը և հանձնեց իշխանին: Բայց Սմբատն ասաց նրան.– Շատ եմ հավանում բերածներդ, սակայն լոկ հարյուր հազար դահեկանի փայտ են տարել Քարքե լեռան [լանջերից], չորս հազար դահեկանի խոտ են կերել այդ դաշտերից, քան*

հազար դահեկանի եղջերուներ, եղնիկներ և նապաստակներ են որսացել մեր անտառներից ու հանդերից, հացի ու ջրի գինն էլ ձեզ եմ բաշխում: Բայց որ երկու տարի շարունակ Խառանի, Ասորեստանի, Մուրհայի անուշահամ գինին մեզանից կտրել էին և իրենք էին արբենում, այդ թող տան: Ապա նաև վեց գավառների հարկը, նաև քաղաքի ամբողջ եկամուտը, որը կերել սպառել են՝ լրիվ չորս հազար դահեկան, թող բոլորը տան, դու՝ ինքդ էլ Քրիստոսի Սուրբ հավատն ընդունիր, ինձ էլ պարսիկների մոտ առաջնորդիր, [այն ժամանակ] նրանց քեզ եմ բաշխում:

Շատ տրտմեցավ Սուրենն ու երեք օր շարունակ ոչինչ խոսել չկարողացավ, սակայն Սմբատը սփոփեց նրան ասելով.– Մի՛ տրտմիր, ամեն բան քո ցանկությամբ կանեմ, բայց միայն եկ միասին անցնենք գնանք մեր եկեղեցիներում ուխտի: Եվ զորքն առած՝ գնացին անցան Արածանի գետի այն կողմը, [Վախթանգի] կնոջն ու որդուն էլ իրենց հետ տարան: Բայց որովհետև գաղտնամտաբար ցանկանում էր խաբել պարսիկին, Սմբատն իր որդի Վահանին թողեց գետի այն կողմը, որպեսզի եթե [նրանցից] որևէ մեկը փորձի այն կողմն անցնել, նա անմիջապես սպանի:

Այնժամ ինքն իր զորքը, թվով չորս հազար այր, թողեց Մեղտիում, իսկ պարսիկներին էլ՝ Արտից գյուղ կոչվող անդաստանում, առավ իր հետ հինգ հարյուր զինվոր, նույնչափ էլ Սուրենին թույլ տվեց ունենալու իր հետ և միասին անցան գնացին դեպի վանքերը: Երբ եկան հասան այնտեղ, ուր Սուրբ Խաչի գաղտնարանն էր, ձիերից իջան և այնպես հետիոտն շարժվեցին դեպի վանքը. քանզի երիվարներով այն կողմն անցնել անհնարին էր, ձորի արևելյան կողմը դժվարանցանելի [մացառուտ] էր ու զառիվայր՝ մինչև եկեղեցին. մանավանդ, որ Սուրբ Գրիգորն ու Մեծն Տրդատը չհամարձակվեցին երիվարներով այդտեղից անցել, ապա ուրիշ որևէ մեկն ինչպե՞ս կարող էր հանդգնել:

Ահա, երբ եկան մերձեցան վանքերին, Սուրբ ուխտի պաշտոնյաները նրանց ընդառաջ եկան և արգելեցին ներս մտնել եկեղեցի [անհավատ] Սուրենի պատճառով: Դրա համար շատ զայրացավ Սմբատը և դառնալով Սուրենին ասաց.– Դուք՝ պարսիկներդ, այնքան պիղծ եք, որ այս մայրիներին անգամ արժանի չեք, ուր մնաց, թե ապրելու լինեք: Եվ Վարազը, որ Պալունյաց իշխանն էր, հարձակվեց նրանց վրա, սրով կտրեց Սուրենի գլուխը, իսկ պարսից մյուս երկու իշխաններին ծառերից կախելով խեղդամահ արին, [նրանց] չորս հարյուր զինվորներին էլ անխտիր սրի քաշեցին: Քանի որ Պալունյաց իշխանի զորքերը թաքնված էին Մեծամորի կողքին՝ բլրի մոտ գտնվող փոք-



**Խաչի պատկերաքանդակ Երերույքի բազիլիկայից (IV–V դարեր)**

*րիկ ամրոցում, երեք հարյուր մարդ էլ Անտաքի ներսում, ուստի սրանք հեծան նրանց (պարսիկների) ձիերը և իջեցրին մինչև Մեծամոր, նրանք էլ, որ դարանում էին, դուրս եկան և երկու կողմերից մեջտեղն առնելով՝ այն հինգ հարյուր մարդկանց բոլորին կոտորեցին:*

*... Մինչդեռ այս բոլորն այսպես եղավ, Սմբատն ու Պալունյաց իշխանը զորքերով թաքնվեցին ձորում մի անտեսանելի տեղ և մի հոգու ուղարկեցին Մեղտի, թե շտապ եկեք դրանց վրա: Ապա հարյուր մարդ էլ ուղարկեցին պարսից զորքին գրգռելու: Երբ պարսիկները տեսան սրանց, միասին գրոհ տվին նրանց ետևից և ուր որ է հասնում էին: Բայց նրանք խուսափեցին, և երբ եկան ելան բլուրն ու հասան Սմբատի մոտ, պարսից զորքը սկսեց կուտակվել ու բազմանալ նրա ու Վարազի չուրջը: Իսկ նրանք ծունր իջնելով օգնության կանչեցին Սուրբ Կարապետին՝ խոսելով այսպես.– Հիշի՛ր մեզ, ով Սուրբ Կարապետ, ու երախտիքը մեր և ինչպես հեռավոր տեղերում օգնության հասար մեզ, ապա մոտիկ տեղում նույնպես հասիր: Եվ աստվածային օգնությունը հասավ նրանց թիկունքից: Ապա ճակատ կազմեցին հենց բլրի վրա՝ Սմբատը աջ կողմից և Վարազը՝ ահյակ, ու սկսեցին արնահեղությունը. և արյամբ թաթախվեցին իրենք էլ, իրենց երիվարներն էլ: Այնքան հեղեցին, որ արյունից մածուցվեց սուրը Սմբատի ափի մեջ և դաստակից էլ կոտրվեց ու չկարողացավ պոկել, որովհետև արյունը [սառչելով] պինդ էր մածուցվել: Եվ հենց պարսիկները նկատեցին, թե սուրը կպել է ափի մեջ ու կոտրվել, և նա մի այլ սուր չի կարող բռնել, ուստի ձայն տալով իրար կանչում էին.– Աճապարե՛ք, քանզի մածուցվեց սուրը քաջի և կոտրվեց սուրը, որ նրա ձեռքումն էր և իր Աստվածն իսկ իրեն կապկապեց:*

*Եվ անհամար բազմությամբ շրջապատեցին նրան ու անխնա հարվածում էին: Ինչպես որ չոր փայտն է ճեղքվելիս ճարճատում, այնպես*

*ճարճատում էին նրանց սրերը Սմբատի գլխին: Իսկ նա բարձրագոչ կանչում էր.– Վա՜յ ձեր քաջությանն ու արիությանը, որ իմ գլուխը կտրելու չափ իսկ զորություն չունեք՝ բոլորդ միասին: Նա այդպես ասաց, որպեսզի ընդմիչտ հիշվի այդ խոսքը: Սակայն հասկացավ, որ հույժ սաստկացնում են [ճնշումը], ուստի ձայն տալով ասում էր. – Ո՞ւր ես, քաջաբազուկ և սարսափ թշնամյաց՝ իշխանդ Պալունյաց, իմ ծերության օրերի գավազան, առաջ սլացիր ինչպես հզոր արծիվ, քանզի անգղներն ու բվեճներն են շրջապատել ինձ...*

*Իսկ նա լսելով՝ թողեց ձախ թևն իր որդի Վահանին, նա, որ Վահանահովիտը կառուցել տվեց, և արծվի նման կռնչալով այնպես սուրաց նրանց վրա, որ նրա ձայնից երիվարներն անգամ դողացին, և Աստծու օգնականությամբ, Սմբատի թիկունքի կողմից հասնելով՝ այնպես ուժգնորեն տեգով հարվածեց պարսիկի թիկունքին, որ երիվարի ողնաշարի հետ միասին կտրելով՝ մյուս կողմից դուրս հանեց, և մինչև կհասցներ հանել [տեգը], նա ընկավ ու մեռավ: Եվ քանի որ չկարողացավ տեգը հանել, ծաղր[անքով] [Սմբատն] ասաց,– «Գնա՛, չափի՛ տեգդ, իմացի՛ր թե քանի՞ կանգուն է նրա հասակը, որպեսզի որևէ մեկը ստելով չխաբի՝ թե երեք կանգուն է»:*

*Ապա Սմբատը թեժ կռվի միջից մի կողմ քաշվեց ու հրամայեց բերել մի պարսիկի. իր ձեռքի վրա պարսիկի գլուխը կտրել տվեց, որպեսզի տաք արյունով ողողվի և թուլանալով պոկվի բռնատեղից:*

*Եվ այդպես էլ եղավ: Այնժամ Սմբատն առավ մի այլ սուր, հեծավ մի ուրիշ նժույգ, բայց հանկարծ նկատեց, որ [թշնամիներից] վեց հազար մարդ շրջապատեցին յուրայիններին, որ ընդամենը հինգ հարյուր էին: Հասկացավ խսկույն, որ երիվարներն այլևս չեն կարողանում շարժվել, կանգնել են, անմիջապես խփեց մի պարսիկի, ցած գլորեց ձիու վրայից և մատուցելով այն Վարազին՝ ասաց.– Հեծի՛ր, իշխանդ Պալունյաց: Նա էլ ոտքն իր ձիու վրայից չուռ տալով, մյուսը հեծավ: Եվ այդ բանը տեսնելով պարսիկ զորքերը խիստ զարմացան, թե ինչպես են կարողանում այդպես փութանակի փոփոխել երիվարները: Եվ այդպես շարունակ այդ զարհուրելի պատերազմի ընթացքում անընդհատ փոխում էին իրենց ձիերը: Իսկ թշնամու զորքը նրանց շուրջը շարունակ կուտակվում, շատանում էր, սակայն որչափ թշնամու զորքերը նրանց շուրջը բազմանում, [ավելի շատանում] էին, այնքան իրենք նրանց շրջապատման մեջ ավելի հանգիստ էին: Եվ այնքան կիտվեցին, որ եզրերում գտնվողները [նրանց] մոտենալու տեղ իսկ չէին գտնում: Այնժամ Սմբատի զորքերից ոմանք սկսեցին երկյուղել [թուլանալ], բայց աստվածային տեսիլքով, կարծես, հանկարծահաս*

*երևաց նրանց աչքին մյուս Սմբատը՝ Հաշտենից իշխանը, դեպ իրենք սուրալիս, որ իր հետ բերում էր նաև Սմբատի որդի Վահան Կամսարականին ու վեց հազար քաջամարտիկ էլ նրա հետ միասին:*

*Նրանց տեսնելով՝ ձայն տվեց Վարազ իշխանն ու ասաց.– Քաջորդի Վահան, որտե՞ղ էիր, որ ավելի վաղ չեկար մեզ օգնության: Եվ Վահանն արտասվախառն ձայն տալով ասաց.– Ո՞ւր է, կենդանի է արդյոք իմ բազմաչարչար այն ծերունի հայրը, թե՞ արդեն երկինք փոխվեց՝ Տիրոջ մոտ իր հանգիստն առնելու: Իսկ Սմբատը լսելով այդ՝ ձայն տվեց.– Որդյակ իմ, Վահա՛ն, մեր Սուրբ Կարապետն էր ինձ թիկունք և զորավիգ, այլ ինչպե՞ս պիտի ես պարսիկների ձեռքով մեռնեի: Լսելով այդ՝ Վահանն իր գոհությունը հայտնեց Աստծուց, ապա ուղիղ դիմացից արշավելով հարվածեց, ճեղքեց թշնամու հոծ բազմությունը, մտավ զորքի մեջ ու սկսեց կոտորել, մի թևում ինքը, իսկ մյուսում Հաշտենից իշխան Սմբատը: Եվ իրենց մեջտեղն առնելով՝ սկսեցին ոչնչացնել նախ պատերազմագլուխները (ծայրաթևերը), ապա իրար վրա բերելով՝ բոլորեցին պարսկական ամբողջ զորքին և մեջերն առնելով՝ սկսեցին անխնա կոտորել, մինչև արևամուտ: Պարսիկներից ազատվեցին միայն երեք հարյուր հոգի, որոնք մեջտեղից սողոսկելով, փախստական գնացին: Բայց քանի որ նրանց նժույգները մնացին, իրենք գաղտագողի մտան մի ձորի մեջ ու թաքնվեցին այնտեղ: Մահից փրկված՝ [թմբրեցին], ննջեցին մինչև մյուս օրվա կեսօրը: Բայց հայոց իշխանի զորքերը եկան, նրանց երեսներին ջուր ցանեցին, արթնացրին և տարան Մեղտի, ուստի և այդ ձորն էլ Թմբրաձոր կոչվեց: Ապա Սմբատը հրամայեց մեռածների դիակները կիտել իրար վրա՝ մոտակա մի բլրի կատարին, որը Վարազի գործած կոտորածի պատճառով կոչվեց Վարազա[կա] բլուր: Իսկ իրենք եկան իջևանեցին Վանքի գյուղը, որին նաև Կենաց վայր էին անվանում: Երբ մտան գյուղը, բնակիչները երգով ու պարով ընդառաջ ելան նրանց: Բայց հետո, երբ դիակներն սկսեցին նեխվել, նրանք դրա վրա երգ հորինեցին (չեր կապեցին) ու ասում էին.*

> **Կերան գազանները մեռածների մարմիններն**
> **ու գիրացան.**
> **Կուզն այնքան կերավ, որ փքվեց ինչպես արջը,**
> **Եվ աղվեսը հպարտացավ՝ առյուծից առավել,**
> **Գայլը, քանզի խիստ շատակեր էր, պայթեց,**
> **Իսկ արջը, քանի որ կերածն իսկույն դուրս է տալիս,**
> **սովից մեռավ.**

**Անգղները, քանզի չատ ագահ էին,**
**Նստեցին և այլևս վեր կենալ չկարողացան,**
**Մկներն այնքան չատ կրեցին ծակերը, իրենց ոտքերը մաչեցին...**

*Այս ամենն երգով ասում էին, ուստի և նրանց դեմ հանդիման եկողները կատարվածին տեղեկանալով՝ գյուղի անունը Շիրականիք (Շերանիկ) կոչեցին: Իսկ այն պարսիկներին, որ [Սմբատը] կարգադրեց Մեղտի տանել, պատվիրեց նրանց բոլորի վերքերը բուժել, բազում քանակությամբ գանձ, ձի ու զենք տվեց նրանց և խաղաղությամբ ճանապարհ դրեց դեպի Պարսկաստան՝ որպես պարսիկներին զրուցատար: Ապա իրենք ելան բարձրացան տերունական տաճարը, անբավ հարստություն ընծայեցին Աստծուն Սուրբ Կարապետի վանքում և մեծավ ցնծությամբ դարձան իրենց տները:*

*1. Վիպասքի ժանրին հարազատ արտահայտություն է, որն անկասկած, չափազանցություն է: Թեև Հովհան Մամիկոնյանի երկասիրության որոշ օրինակներում «120 տարվա» փոխարեն հանդիպում է «քանի-քանի տարիներ» ավելի համապատասխան եզրը:*

*2. Այս արտահայտությունից կարելի է մակաբերել, որ Գայլ Վահանը եղել է Մուշեղի լոկ հոգեզավակը:*

*3. Աստղոն ամրոցը, որ հայտնի է նաև Աստղոնք ձևով, տեղադրվում է Տարոն գավառում:*

*4. **Օձ** (Օձբերդ, Վիշապաքաղաք) – բերդաքաղաք Տուրուբերան աշխարհի Տարոն գավառում, Մուշի դաշտի ծայրամասում՝ Մեղրագետի ափին:*

*5. Տեղանուն է՝ Ծծմակաքիթ անվանումով:*

*6. Հայտնի է նաև Եղանց բերդ, Եղնուտ, Յողնուբերդ անվանումներով:*

*7. Նիա հորջորջմամբ ծովի (լճի, լճակի) գոյությունը ժխտելի է: Թերևս գրչագրական աղավաղում է, կամ էլ այս տարածքում հաճախակի առաջացող ճահճային գոյացումների առկայության երևույթ:*

*8. **Զյունակերտ** – քաղաք Տուրուբերան նահանգի Տարոն գավառում՝ Մուշ քաղաքից արևելք:*

*9. Խոսքը հավանաբար Գրգուռ լեռան մասին է:*

*10. Անկասկած է, որ հայկական զորքերի թվաքանակն ուռճացված է, ինչպես և այլ դեպքերում:*

*11. Ենթադրելի է, որ բոլոր այս իրադարձությունները տեղի են ունեցել 605 թվականի ընթացքում:*

*12. Այստեղ խոսքը վերաբերում է Անդոկ լեռանը:*





## ԲԱԺԻՆ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ

## (VII-IX դարեր)

## I. ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՎ ԵՐԿՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

### ՍԵԲԵՈՍՆ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

#### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԽԲ.*** *Հերակլը[1] մեռավ, և թագավորեց նրա որդի Կոստանդինը[2]: Հայոց աշխարհում ոչ ոք զորավար չընտրվեց, քանզի իշխանները պառակտվելով՝ միմյանցից հեռացան:*

*Եվ [արաբների] ապականիչ զորքերը[3] Ասորեստանի կողմից Ձորո[4] ճանապարհներով ելան Տարոն աշխարհ, գրավեցին այն, [ինչպես նաև] Բզնունիքն ու Աղիովիտը: Եվ ճանապարհ ընկնելով դեպի Բերկրիի ձորը՝ Որդսպուով ու Կոգովիտով խուժեցին Այրարատ: Հայոց զորքերից ոչ ոք չկարողացավ գույժը հասցնել Դվին ավան՝ բացի երեք իշխան այրերից, որոնք գնում էին ժողովելու ցրիվ զորքը՝ Թեոդորոս Վահևունին, Խաչյան Առավեղյանը և Շապուհ Ամատունին: Նրանք փախան գնացին դեպի Դվին. անցնելով Մեծամորի կամրջով՝ ավերեցին և հասան՝ գույժ տալու ավանին: Բերդում հավաքեցին գավառի մարդկանց, որ եկել էին այգեկութի: Իսկ Թեոդորոսը գնաց Նախճավան քաղաք:*

*Թշնամին (դուշման) հասնելով Մեծամորի կամրջին՝ չկարողացավ անցնել, բայց իրենց ուղեկից ունեին Մոկաց Վարդիկ իշխանին, որ կոչվում էր Ակնիկ: Ապա անցնելով Մեծամորի կամրջով՝ ասպատակեցին ողջ երկիրը և ժողովելով հույժ բազում ավարն ու գերիներին՝ եկան բանակեցին Խոսրովակերտ անտառի եզրին:*

*Եվ եղավ՝ հինգերորդ օրը դիմեցին քաղաքի վրա: Քաղաքը մատնվեց նրանց ձեռքը, քանզի շուրջբոլորը ծուխ արձակեցին, ծխով*

*ու նետաձգությամբ քշեցին պարսպի պահապաններին, սանդուղքներ կանգնեցնելով՝ ելան պարսպի վրա և ներս խուժելով՝ բացեցին քաղաքի դարպասը: Թշնամիների զորքերը ներս խուժելով՝ քաղաքի բազմությանը կոտորեցին սրով և առնելով քաղաքի ավարն ու կողոպուտը՝ ելան ու բանակեցին նույն բանակատեղում. Տրե ամսի քսանն էր՝ ուրբաթ օր[5]: Մի քանի օր դադար առնելով՝ ելան գնացին նույն ճանապարհով, որով եկել էին: Եվ տարան գերիների բազմությունը՝ երեսունհինգ հազար հոգի: Բայց հայոց իշխանը՝ Ռշտունյաց տերը[6], Կոգովիտ գավառում դարան մտնելով, սակավաթիվ [զորքով] հարձակվեց նրանց վրա, սակայն չկարողացավ նրանց դիմադարձ կանգնել. փախուստի դիմեց նրանց առջև: Իսկ նրանք, հետապնդելով նրանց, շատերին կոտորեցին և գնացին անցան Ասորեստան: Այս կատարվեց Եզր կաթողիկոսի տարիներին[7]:*

*Այդ կռվի կապակցությամբ կայսրը Ռշտունյաց տեր Թեոդորոսին զորավարության հրաման արձակեց՝ պատրիկության պատվով հանդերձ:*

*Այս ամենը կատարվեց Ներսես կաթողիկոսի միջոցով, որը նույն տարում[8] հայրապետության աթոռին հաջորդեց Եզր կաթողիկոսին:*

*... Իսկ [հույները] զորավար կարգեցին Թեոդորոսին՝[9], Հայաստանյայց հավատարիմ իշխաններից մեկին՝ նրանցից, որ հունաց բաժնից էին:*

*Երբ սա զորավարությունն ստանձնեց, թագավորին[10] աղաչեց ու խնդրեց բարեգութ գտնվել՝ ներել նրանց, որոնց աքսորել էր Աֆրիկա: Եվ մանավանդ ասպետի՝ Խոսրով Շում կոչված Սմբատի որդու մասին [խնդրեց]: Աստված քաղցրացրեց թագավորի սիրտը, և հրամայեց բերել նրանց թագավորական քաղաք: Ընդունեց նրանց որպես թագավորության սիրելիների, և նրա [ասպետի] որդուն՝ Սմբատին, կարգեց առաջին սպաթար բոլոր սպաթարների մեջ և կանտիտատ[11]: Իր թագավորության հինգերորդ տարում [ասպետին] վերստին կարգեց նախկին դասի մեջ: Նույնկերպ նաև՝ Վահան Խորխոռունուն ու մյուսներին ևս: Եվ Հայաստան ուղարկեց այր ոմն իշխան՝ անունը Թումաս: Գալով՝ սա չկամեցավ քանդել դաշինքը, որ կար կայսեր և մարաց իշխանի միջև. բոլոր իշխաններին միաբանեց իր ձեռքի տակ, գնաց մարաց իշխանի մոտ և խոսեց նրա հետ խաղաղությամբ: Վերցրեց նրանից շատ ինչք, երդմամբ խոստացավ նրան, որ Թեոդորոսին, որը Հայոց աշխարհի իշխանն էր, կապանքներով տանել կտա պալատ: Ապա դարձավ եկավ կրկին հայոց զորքերի մեջ: Եվ երբ Թեոդորոսը եկավ Կոտեից երկիր, հանկարծակի հարձակվեցին նրա վրա, բռնեցին նրան, կապեցին և տանել տվին թագավորի առջև:*

*Բայց երբ Կոստանդին արքան լսեց, հույժ խռովվեց, քանզի կալանքն իր հրամանով չէր: Հրամայեց ազատել նրան կապանքներից և ընթերցել ամբաստանագիրը: Իմանալով նենգությունը՝ հրամայեց կանչել իր առջև, ընդունեց նրան սիրով և նույն իշխանական պատվով: Նրան արքունուստ նշանակեց ռոճիկ և ընդունելություն[12]: Ապա հրամայեց կանչել Թումասին, բայց չթույլատրվեց, որ նա արքունիք մտնի, այլ որ դրսում քննություն կատարեն: Ռշտունյաց տեր Թեոդորոսին արդարացրին իր գործերի մեջ և նրա վրա նույն պարտականությունը դրին: Իսկ Թումասին անարգելով՝ զրկեցին աստիճանից: Այնժամ հանդիպեցին իրար ասպետը և Ռշտունյաց տեր Թեոդորոսը, գիրկընդխառն արցունք թափեցին, քանզի պարսից Խոսրով արքայի արքունիքում միասին էին մեծացել:*

*Բայց ասպետը չկարողացավ հպատակվել հունաց իշխանությանը, այլ իր մտքում նենգ բան որոշեց. Կոստանդին թագավորից թույլտվություն խնդրեց, որ իր հարազատներից չորս մարդու արձակի Հայաստան՝ իր մոտ բերելու իր ունեցվածքը: Թագավորը հրամայեց թույլատրել նրան այդ: Իսկ նա այլակերպվելով՝ առավ իր հետ երեք մարդ ու հասնելով ծովեզր՝ ցույց տվեց արքունի հրամանը: Ելավ նավ, անցավ ծովով և թռչնի նման հապճեպ գնալով՝ փութով եկավ հասավ Տայք ու ամրացավ այնտեղ, քանզի տայեցիք խնդությամբ ընդունեցին նրան:*

*Այդ ժամանակ քիչ խռովություններ չեղան Հայոց աշխարհում, քանզի հայոց զորավարին փութով եկավ հասավ արքունի հրաման՝ փակել բոլոր անցուղիները և խուզարկել երկրի ամրոցները: Ապա լուր տրվեց, թե [ասպետը] եկավ ամրացավ Հայաստանում՝ Տայքում:*

*Այնժամ հունաց զորավար Թեոդորոսը հայոց զորքի զորապետներով ու նախարարներով հանդերձ հրաման տվեց Ներսես կաթողիկոսին ուղարկել ասպետի մոտ՝ բերելու իրեն հավատարմության երդումը, երբ [կայսրից] նրա համար խնդրեն երկրի իշխանությունը և բերեն նրան իր կնոջն ու որդիներին:*

*Կաթողիկոսը գնաց նրա հետ հաստատեց երդումը, որպեսզի [ասպետը] ուրիշ ճանապարհ չբռնի[13], և դարձավ եկավ այնտեղից: Եվ նրանք Կոստանդին թագավորին գրեցին՝ վարվելու նրա հետ ըստ երդման, որը խոստացավ, քանզի ասպետը թագավորին գրել էր այսպես. «Քո ծառան եմ և ձեր ծառայությունից ոչ մի տեղ չեմ գնա, բայց քանի որ ոմանք ինձ ասացին. «Գնալու ես այնտեղ, որտեղից եկար», այդ պատճառով վախեցա և փախա: Սակայն արդ՝ եթե արժանի եք համարում, հավատարմությամբ կջանամ, կծառայեմ և կապրեմ ու կմեռնեմ հանուն ձերդ աստվածապաշտության»: Այնժամ Կոստանդին թագավորը հրամայեց կարգել նրան կյուրապաղատ ու տալ*

*նրան պատվո պսակ և աշխարհի իշխանությունը: Նաև հրամայեց մեծ շուքով ուղարկել [ասպետի] կնոջն ու որդիներին և տանել տվեց արծաթե գահույք՝ այլ թանկագին ինչքով հանդերձ:*

*Արդ՝ մինչդեռ հրովարտակն ու պսակը կբերեին՝ նրան կյուրապաղատ կարգելու, նա հանկարծակի հիվանդացավ և մեռավ*[14]*: Վերցրին նրա դին, տարան թաղեցին իր հոր մոտ՝ Դարույնքում: Նրա անդրանիկ որդուն, որի անունը Սմբատ էր, արքան արժանացրեց հոր պատվին՝ տալով նրան հայրենի ասպետության նախարարական իշխանությունը, և դարձրեց նրան իր զորքերի դրունգարը: Նրան կին տվեց Արշակունիների տոհմից՝ իր մերձավորներից, և ուղարկեց բանակ՝ իր զորքերի մոտ: Սրանից հետո Ռշտունյաց տեր Թեոդորոսին մեծ շուքով ուղարկեց Հայաստան և տվեց նրան նույն զորավարության պաշտոնը՝ [անկախ այն բանից] կկամենա՞ն Հայոց իշխանները, թե՞ ոչ: Եկավ հաստատվեց նույն պաշտոնում:*

*Եվ եղավ՝ հաջորդ տարվա գալուն պես Իսմայելի զորքը եկավ Ատրպատական, և բաժանվեցին երեք մասի. մի թևը [արշավեց] դեպի Այրարատ, մի թևը՝ դեպի Վասպուրականի կողմը, իսկ մի թևը՝ դեպի Աղվանք: Արդ՝ որոնք արշավեցին Վասպուրականի կողմերը, սփռվեցին, սրի մատնեցին այդ ողջ տարածքը, վերցրին ավարն ու գերիներին: Եկան հավաքվեցին Հերևանում և կռիվ մղեցին բերդի դեմ, բայց չկարողացան գրավել: Եկան Որդսպու, բայց նրան ևս ոչինչ չկարողացան անել: Գնացին այնտեղից և բանակեցին Արծափքում՝ բերդի հանդեպ՝ գետի չուրջը: Սկսեցին կռիվ մղել բերդի դեմ և այնտեղ բերդից շատերին մեծ վնաս հասցրին: Արդ՝ նրանք թիկունքի կողմից՝ Ասորենի կողմից, որ Կախանկտուց են կոչում, ունեին ելք դեպի բերդի գլուխը: Արդ՝ նրանով մարդիկ վայր իջան բերդից՝ գնալ-խնդրելու Դարոնք բերդից իրենց համար օգնական զորք: Սմբատ Բագրատունին՝ Վարազ Սահակի որդին, նրանց քառասուն մարդ տվեց, և գնացին գիշերով ելան բերդ, բայց չհսկեցին գաղտնուղին: Եվ իսմայելցիներն այդ տեղն իմացան, իսկույն ելան բերդը և մինչև առավոտը [բացվելը] գրավեցին այդ պահակետը: Այդտեղի տասը պահապան մարդկանց բռնեցին քնած և սպանեցին:*

***Գլ. ԽԵ.*** *Եվ եղավ՝ Կոստանդինի երկրորդ տարում՝ հոռի ամսի 23-ին՝ կիրակի օրը՝ առավոտյան*[15]*, իսմայելացիները բերդի մեջ թիկունքից ու առջևից աղմուկ գցեցին և կոտորեցին նրանց սրով սուսերի: Շատերը գահավեժ լինելով՝ մեռան: Կանանց ու մանուկներին իջեցրին բերդից և կամենում էին սպանել. գերությանը թիվ չկար, իսկ ճարակող անասունները՝ չափազանց շատ [էին]: Եվ եղավ՝ հաջորդ օրը՝ առավոտյան, Հայոց զորավար Թեոդորոսն իր զորքով եկավ վրա*

*հասավ, հարձակվեց նրանց վրա ու ջարդեց նրանց սաստիկ կոտորածով: Նրանք Իսմայելի բոլոր զորքերից երեք հազար ընտիր սպառազեններ էին, և նրանցից ոչ ոք չփրկվեց, բայց միայն սակավաթիվ հետիոտն ճողոպրյալներ գնացին ամրացան Շամբում: Տերն այդ օրը իսմայելացիների ձեռքից փրկեց գերիների բազմությունը և Իսմայելին ջախջախեց մեծ կործանմամբ. սպանվեցին Իսմայելի երկու զորապետները՝ Օթմանը և Ոզբան: Հայոց զորավարը մեծ հաղթանակ տարավ: Եվ այդ պատերազմից հայոց զորավարը Կոստանդինին տանել տվեց ընծաներ՝ 100 ընտրագույն ձի, որ ստանալով՝ ինքն արքան և ողջ պալատն ուրախացան, և չուտով մեծ շնորհակալություն հայտնեց:*

*1. Բյուզանդիայի կայսր Հերակլ (610-641):*

*2. Խոսքը Հերակլի որդի Կոստանդին III կայսեր (641) մասին է:*

*3. Նկատի ունի արաբական զորքերին:*

*4. Խոսքը Տավրոսյան լեռների վրա գտնվող Զորա պահակ տեղանվան մասին է:*

*5. Այսինքն՝ 640 թ. հոկտեմբերի 6-ին:*

*6. Թեոդորոս Ռշտունին*

*7. Եզր Ա Փառաժնակերտցի (630-641):*

*8. Այսինքն՝ 641 թվականին:*

*9. Խոսքը Թեոդորոս Ռշտունու մասին է:*

*10. Այդ ժամանակ Բյուզանդիայի կայսրը Կոստանդ II-ն էր (641-661), որին Սեբեոսն անվանում է Կոստանդին:*

*11. Պաշտոն և պատվաստիճան Բյուզանդիայում:*

*12. Այսինքն՝ իրավունք՝ մասնակցելու արքունական ընդունելություններին:*

*13. Այսինքն՝ որպեսզի չանցնի պարսիկների կողմը:*

*14. Ենթադրվում է, որ Վարազտիրոց Բագրատունուն սպանել են բյուզանդացիները:*

*15. Այսինքն՝ 650 թվականի օգոստոսի 8-ի կիրակի օրը:*

## ՀՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆՅԱՆՆ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

### ՏԱՐՈՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

*Պատճեն չորրորդ*

### *ՎԱՀԱՆԻ ՈՐԴԻ ՏԻՐԱՆԻ ՄԱՀՎԱՆ ԵՎ ԱՂԻ ԾՈՎԻ ԱՓԻՆ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ*

*Դրանից ուղիղ ութ տարի հետո հանկարծակի երևաց Աբդռահիմը՝ Մահմեդի քրոջ որդին, իր ամբողջ ազգատոհմով, բազում մարդկանցով, առած իր հետ նաև տասնևութ հազար հեծյալ զինվորներ, եկավ*



*Մուհհամեդ մարգարեի կնիքը*

*և Հայոց երկիրը հարկի տակ դրեց: Այնժամ Տիրան [Մամիկոնյանը] հրամայեց իր բոլոր զորքին գումար կազմել և պատերազմի պատրաստվել: Սակայն վրաց Ջոջիկ իշխանը՝ Վաչդենի որդին, ժամանակը հարմար գտնելով, ապստամբեցնում է բովանդակ Հայաստանը, որպեսզի չգնան Տիրանին զորավիգ: Երբ Տիրանը տեսավ այս բաները, հասկացավ, որ ամեն ինչի վերջը հասել է, ուստի հետևյալ պատվիրանը տվեց իր այն ութ հազար զորքերին, որոնք կամավոր էին եկել միացել իրեն.*

*– Ով ժողովո՛ւրդ Քրիստոսի, լավ է մեզ մեռնել, քան Աստծո եկեղեցին [անհավատ] տաճիկներին հարկատու եղած տեսնել:*

*Եվ վաղ առավոտից սկսեցին հավաքվել Գրգուռ լեռան ստորոտում, հարավային կողմի դաշտավայրում: Համախմբվեցին և պատերազմի մեջ մտան, որը լուսաբացից մինչև ժամը երեքը տևեց: Եվ մինչդեռ տաճկաստանցիները փախուստի էին դիմում, հանկարծ նկատեցին, որ Անձևացյաց Սահուռ իշխանն ապստամբեց, կռվից դուրս բերեց իր զորքը և սուրը հայոց զորքի դեմ դարձրեց: Բայց Տիրանը երկու բանակները ճեղքելով մոտեցավ, դուրս եկավ Սահուռի դեմ ու ձայն տվեց.*

*– Կա՛ց, ուրացող Սահուռ, դա Քրիստոսն էր, որ քեզ իմ ձեռքը հանձնեց: Ապա սրով հարվածեց, կտրեց Սահուռի գլուխը և ինքն էլ, երկու իշխանների հետ միասին, հենց նույն տեղում կնքեցին իրենց մահկանացուն: Այնուհետև [թշնամիները] հայոց զորքերին բոլոր կողմերից մեջտեղն առնելով՝ բոլորին էլ կենաց ավարտի հասցրեցին: Իսկ նրանք, որ փախստական եղած ազատվեցին, անցան Օձ քաղաքի կողմերը:*

## ՂԵՎՈՆԴՆ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Ղևոնդը VIII դարի հայ միակ պատմիչն է: Նրա մասին կենսագրական տվյալներ չունենք: Հայտնի է, որ եղել է հմուտ աստվածաբան, վարդապետ: Իշխան Շապուհ Բագրատունու հանձնարարությամբ***

***հեղինակել է «Պատմություն» խորագիրը կրող երկասիրությունը։***

***Ղևոնդի Պատմությունն ընդգրկում է մի կարճ ժամանակահատված՝ արաբների հանդես գալուց ու նվաճողական արշավանքից մինչև 788 թվականը։ Զափազանց արժեքավոր են Պատմության այն հատվածները, որոնք վերաբերում են VIII դարի երկրորդ կեսի իրադարձություններին, քանզի հեղինակը դրանք գրել է իբրև իր նկարագրած դեպքերի ժամանակակից։***

***Ղևոնդի երկը եզակի ու արժանահավատ սկզբնաղբյուր է VIII դարում հայ ժողովրդի մղած հակաարաբական ապստամբությունների և արաբների հողային ու հարկային քաղաքականության մանրամասները ուսումնասիրելու համար։***

***Ղևոնդի Պատմությունից ստորև բերված հատվածները տրվում են ըստ Ա. Ն. Տեր-Ղևոնդյանի աշխարհաբար թարգմանության, որ լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարով (Երևան, 1982)։***

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Գ.*** *Հռոմեց կայսեր Հերակլեսի թոռ Կոստանդնի երկրորդ տարում*[1] ***Թեոդորոս*** *իշխանը տեղեկացավ, որ թշնամին հարձակվել է մեր երկրի վրա*[2]*։*

*Վերցնելով իր զորքը՝ նա կամենում էր Զորա ճանապարհի կիրճերը գրավել, սակայն չկարողացավ նրանցից առաջ ժամանել, քանզի թշնամիները, թևավոր օձերի նման, օդաթև արագությամբ հարձակվելով, իրենց ետևում թողեցին հայկական զորքը և առաջանալով ընթացան դեպի Դվին մայրաքաղաքը։ Նրանք քաղաքը պատերազմելու ընդունակ այրերից թափուր գտան, քանզի ամենքը Թեոդորոս իշխանի հետ գնացել էին, և միայն կանայք, մանուկներ և այլ խառնիճաղանջ (բազմություն) կար, որի մեջ պատերազմելու ընդունակ այրեր չկային։ Հասան քաղաք, անմիջապես գրավեցին ամրոցը*[3] *և այնտեղ գտնվող տղամարդկանց կոտորեցին, իսկ կանանց ու մանուկներին՝ երեսունհինգ հազար հոգի, գերեվարեցին։*

*Արդ, ո՞վ արդյոք կարող է արժանավորապես ողբալ աղետի թշվառությունը, քանզի ամեն կողմից անելանելի ծանր դրության մեջ էին։ Սուրբ եկեղեցիներն, ուր հեթանոսները չպետք է մտնեին, քանդված ու քայքայված, անօրենների ոտից կոխան էին դարձել։ Քահանաները սարկավագներով ու պաշտոնյաներով հանդերձ ժպիրհ և անողորմ թշնամիների սրով խողխողված էին։ Բազում փափկասուն տիկնայք, որոնք նեղության փորձանքի չէին ենթարկվել, գանահա-*

*րության տանջանքներ կրելով՝ քարշ էին տրվել հրապարակները, ողբ ու կոծ էին անում վրա հասած օրհասի համար: Այլև գերյալների բազմությունը, ուստրերով ու դուստրերով, նույն տագնապի, հեծության և հառաչանքի մեջ էին: Քանզի չգիտեին, ո՞ր մեկին առավել ողբալ՝ անօրենի սրով խողխողվածների՞ն, թե՞ կենդանի մնացած ուստրերին ու դուստրերին, որոնց խլել տարել էին՝ Քրիստոսի հավատքին ու հոգևոր աստվածային փառասիրություններին օտարացնելու համար: Շատերը թեպետ ողբով լաց էին լինում ողորմելի տեսքով իրար վրա ընկած արյունաթաթավ դիակների համար, սակայն ի վիճակի չէին նրանց մարմինները հավաքել և գերեզմանին հանձնել: Ի դեպ այստեղ հարմար են մարգարեի ողբի խոսքերը. «Ով Աստված, հեթանոսները մտան քո ժառանգությունը, պղծեցին քո սուրբ տաճարը, քո ծառաների դիակները չպրտեցին որպես երկնքի թռչունների կեր, իսկ քո սրբերի մարմինները երկրի գազանների առջև (նետեցին), և մարդ չկար որ թաղեր նրանց»[4]: Այս ամեն պատուհասային անցքերը, որոնք այն ժամանակ Հրեաստանում էին եղել, այժմ մեզ մոտ կատարվեցին՝ մեծ տագնապ պատճառելով:*

*Իսկ Հայոց զորքը, նախարարներով ու (Թեոդորոս) իշխանով մեկտեղ, երբ տեսան, թե ինչպես ավազակները սաստիկ նեղում են, նրանց ռազմիկ այրերի ձեռքերը թուլացան և չկարողացան ավարառու թշնամու վրա հարձակվել, քանզի թեպետ տեսնում էին իրենց կանանց և մանուկներին գերի տարված, բայց, քանի որ նվազ էին թվով, չկարողացան դուրս գալ նրանց դեմ, այլ նստած ողբ ու կոծով ավաղում էին իրենց կանանց և մանուկներին: Իսկ հագարացիք նրանց տարան Ասորիք և այլևս տասը տարի չհարձակվեցին Հայոց աշխարհի վրա:*

***Գլ. Բ.*** *[Իսմայելացիները] զորքի մի մեծ հատված բաժանելով՝ Պարսկաստանի կողմից ասպատակեց Հայոց երկիրը և գերեց մարաց ավանները, Գողթն գավառը և Նախճավան դաստակերտը: Տղամարդկանց շատերին սրի քաշեցին, այլոց գերեվարեցին կանանցով ու մանուկներով և անցկացրեցին Երասխ գետից, Ջուղայի հունով: Այս զորքը երկուսի բաժանվեց. մի մասը գերիներին վերցնելով դարձավ իր երկիրը, իսկ մի գունդ էլ առանձնանալով՝ ասպատակեց Արտազ գավառը, (հարձակվեց) հունաց զորավարի վրա, որի անունն էր Պռոկոպ: Սա բանակ էր դրել Կոգովիտ գավառում, Բագուձորի և Մարդուցայքի սահմանի վրա: Թեոդորոս իշխանը, որ Ռշտունյաց տոհմից էր, եղելությանն իրազեկ լինելով, ազդարարեց Պռոկոպ զորավարին, թե՝ Իսմայելի ավարառու զորքը ելել է ու գալիս է մեր դեմ*[5]*:*

*Իսկ նա զորքի բազմությանն ապավինելով և ոչ՝ Աստծուն, որը հաղթություն է տալիս պատերազմներում, Հայոց իշխանի խոսքերին կարևորություն չտվեց. և սա դառնացած Հայոց աշխարհի կորստյան և զորավարի անտարբերության համար չկարողանալով համբերել, այլ մտնելով՝ երկրորդում և երրորդում էր իր խոսքը: Զորավարը, բարկանալով իշխանի վրա, իր ձեռքում եղած գավազանը նետեց նրա ետևից:*

*Թեոդորոսը զայրացած դուրս եկավ նրա մոտից և իսկույն հրամայեց իր իշխանության տակ եղած զորքերին՝ «զրահավորվեցեք և ելեք Իսմայելի դեմ»: Նրանք, իրենց երիվարները հեծնելով՝ դարանամուտ եղան այն բլրի ետևում, որը Եղբարք էին կոչում: Կիրճերի մուտքը կտրելով՝ նրանցից (արաբներից) չատերին կոտորեցին և կողոպտելով ընկածներին, թողեցին (Պռոկոպ) զորավարին ու գնացին Գառնի գավառը*[6]*:*

*Ապա Պռոկոպը ևս իր զորքին հրաման տվեց հարձակվել թշնամու վրա. սակայն Իսմայելի զորքը նրանց վրա հարձակվեց, հույների մեծ մասին կոտորեց և, այլոց փախուստի մատնելով, հետապնդեց մինչև ճամբարը, իսկ իրենք (արաբները) իրենց բանակատեղին վերադառնալով՝ հանգստացան: Ասում են, թե հունաց զորքի թիվը վեց բյուրից ավելի էր, իսկ իսմայելացիք նվազ, քան մեկ բյուր: Հաջորդ օրը ճամբարում կուտակված ավարը հավաքելով (արաբները) վերադարձան, գնացին իրենց երկիրը:*

*Այս բանը կատարվեց Իսմայելի իշխաններ Աբու Բաքրի, Օթմանի և Ամրի քսաներկուերորդ տարում: Նրանք երեք տարի դադարեցին Հայոց աշխարհի վրա հարձակվելուց: Ապա իրենց իշխանության քսանվեցերորդ տարում ծանր զորքով դարձյալ հարձակվեցին Հայոց աշխարհի վրա:*

*Ապա նրանց իշխանության երեսունվեցերորդ տարում զորք հավաքելով, դարձյալ հարձակվեցին Հայոց երկրի վրա*[7]*, և նրանց գլխավորներն էին Օթմանն ու Օգբան: Երբ Հայաստանի սահմանները հասան, երեք խմբի բաժանվելով՝ ասպատակ սփռեցին: Մի խումբը, գնալով Վասպուրականի կողմը, գրավեց ավաններ և ամրոցներ, որոնք ձգվում էին մինչև Նախճավան քաղաքը: Մի խումբը գնաց Տարոնի կողմերը, իսկ մի խումբն էլ, հասնելով Կոգովիտ, պաշարեց Արծափ ամրոցը: Բերդի մուտքը գտնելով, (թշնամիները) գիշերը գաղտագողի նրա վրա բարձրացան, քանզի պահապանները քնած էին, և գրավեցին ամրոցը: Այնտեղ գտնվող տղամարդկանց կապանքների տակ դրեցին, այնուհետև իրենց սանձարձակության տալով՝ սկսեցին*

*գազրելի պղծությամբ խառնակվել կանանց հետ։*

*Սակայն ամենատեսն Աստված գթալով՝ չլքեց իր անվան հավատացողներին, այլ գործված չարիքների վրեժն առնելու համար ուղարկեց Թեոդորոս իշխանին, որը 600 զինվառ ռազմիկներով արագաթև հարձակումով արծվի նման անմիջապես խոյացավ ավարառու թշնամու վրա, կոտորեց մոտավորապես 3000 թշնամու, կապվածներին արձակեց, իսկ ոսոխի փոքրաթիվ մնացորդներին փախուստի մատնեց։ (Հայ ռազմիկները) գերյալներին վերադարձրին և թշնամու ավարն ու կողոպուտը ժողովելով՝ խնդությամբ վերադարձան՝ փառավորելով Աստծուն, որ իրենց վրեժը լուծեց թշնամիներից։ Իսկ այն (արաբական) զորքը, որի մասին նախապես պատմել եմ, առնելով ավարը և գերիներին, գնաց Ասորիք և դրանից հետո երկու տարի դադար տվեց։*

*Այս չարիքները գործելով իրենց [իշխանության] օրոք՝ Իսմայելի իշխաններ Աբու Բաքրը, Օթմանը և Ամրը վախճանվեցին։*

*1. Այսինքն՝ 642 թվականին։ Իրականում արշավանքը տեղի է ունեցել 640 թվականին։*

*2. Ղևոնդը նախ նկարագրում է արաբների երկրորդ և երրորդ արշավանքները, ապա մի քանի տարի գնում է ետ և նկարագրում 640–642 թթ. արշավանքները։ Դա է պատճառը, որ մենք 640–642 թթ. վերաբերող հատվածը տեղաշարժել ենք և բերել առաջ։*

*3. Արաբները Դվինը գրավել են 640 թվականի հոկտեմբերի 6-ի ուրբաթ օրը։*

*4. Տե՛ս **Սաղմոս ՀԸ**, 1–3։*

*5. Սա 642–643 թթ. արաբական երկրորդ արշավանքն է դեպի Հայաստան։*

*6. Վասպուրականի Գառնի գավառն է։*

*7. Այսինքն՝ 650 թվականին, սա արաբական երրորդ արշավանքն է դեպի Հայաստան։*

## ԱՐԱԲԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԸՍՏ ԱՍՈՂԻԿԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ

#### *Հանդես Բ*

***Գլ. Բ.** Թեոդորոս Ռշտունու իշխանության այս նույն օրերում, (**ՁՁ**) ութսունվեց թվականին տաճիկներն առաջին անգամ երևացին Հայոց աշխարհում, Օմար ամիր-ալ-մումնիայի հրամանով, որը երկրորդն էր Մահմեդից հետո։ Իսկ (**ՂԵ**) իննսունհինգ թվականին դարձյալ բազմաթիվ զորքերով եկան տաճիկները, գրավեցին Դվին քաղաքը, գե-*

*րեցին (ԼԵՌ) երեսունհինգ հազար մարդ, և այնուհետև տիրեցին Հայոց, Վրաց և Աղվանից երկրներին:*

*Սակայն մեր Հայոց աշխարհը դուրս է գալիս տաճիկների տիրապետության տակից հնազանդվում է կայսեր, և Ներսեսի[1] խնդրանքով հայոց հրամանատար (իմա՝ կառավարիչ) է դառնում Համազասպը[2] (ՃԴ) հարյուր չորս թվականին: Այդ բանը լսելով՝ ամիրապետը զայրացած կոտորում է հայոց պատանդներին՝ թվով (ՌՉՀԷ) հազար յոթ հարյուր յոթանասունյոթ մարդ:*

*1. Նկատի ունի Ներսես Գ Տայեցուն:*

*2. Համազասպ Մամիկոնյանը Հայոց իշխան է եղել 654-661 թվականներին:*

## ՍԵԲԵՈՍԸ 652 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՅ-ԱՐԱԲԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԽԸ.*** *Կոստանդի թագավորության 11-րդ տարում հայերն ապստամբեցին ու դուրս եկան հունաց թագավորությունից և հնազանդվեցին Իսմայելի արքային ծառայության. Ռշտունյաց տեր Թեոդորոսը և հայոց բոլոր իշխանները ուխտ դրին մահու հետ և դժոխքի հետ դաշինք կռեցին՝ դեն ձգելով այն աստվածային դաշնավորությունը[1]: Արդ՝ Իսմայելի զորապետը խոսեց նրանց հետ և ասաց. «Իմ և ձեր միջև այս հաշտության ուխտը թող լինի՝ քանի տարի և դուք կամենաք: Մի երեք տարի ձեզնից հարկ չեմ առնի: Ապա կտաք երդմամբ, որչափ և դուք կամենաք: Ձեր աշխարհում 15 հազար հեծյալ պահեցե՛ք և [ձեր] աշխարհից պարենավորեցե՛ք. ես [դա] արքունի հարկ կհամարեմ: [Ձեր] հեծելազորին Ասորիք չեմ ուղարկի, բայց ուրիշ որտեղ էլ հրամայեմ, գործին պատրաստ պիտի լինեն: Ամիրաներ չեմ ուղարկի բերդերը, ոչ էլ մեծաթիվ կամ նույնիսկ մեկ տաճիկ հեծյալ զորական: Թշնամի չի մտնի Հայաստան, իսկ եթե հոռոմը գա ձեզ վրա, ձեզ օգնական զորքեր կուղարկեմ՝ որչափ և դուք կամենաք: Երդվում եմ մեծ աստծով, որ չեմ ստում»:*

*Եվ այդպես նեռի արբանյակը պառակտեց նրանց [հայերին] հոռոմներից, քանզի թեպետ կայսրը բազում աղաչանքներ ու պաղատանքներ գրեց նրանց և կանչեց նրանց իր մոտ, բայց չկամեցան լսել նրան: Ապա ասաց. «Ես գալիս եմ Կարին քաղաք, դուք ևս եկեք ինձ մոտ»: Եվ կամ՝ «Ես գամ ձեզ մոտ, 70.000 հոգի տամ ձեզ օգնության, և միասին խորհենք, թե ինչ է պետք անել». բայցևայնպես [հայերը] չկամեցան լսել նրան:*

*Եվ բոլոր հոռոմ զորքերն իրենց թագավորի առջև ամբաստանում ու տրտնջում էին Ուշտունյաց տիրոջից ու հայերից այն պարտության համար, որ կրեցին Մարդուցայքում: Քանզի ասացին. «Միաբանվեցին իսմայելացիների հետ. մեզ հույս տվին և զորքերը ցրել տվին՝ Ատրպատականն ասպատակելու, իսկ նրանց հանկարծակի բերին մեզ վրա, ջարդել տվին մեզ, և մեր ողջ ունեցվածքն այնտեղ կորավ. բայց թող գնանք Հայաստան և մեր ունեցվածքը փնտրենք»:*

*Այնժամ Կոստանդին արքան համաձայնեց կատարել զորքերի ցանկությունը: Վերցրեց իր զորքերը և հարյուր հազարով գնաց Հայաստան: Երբ հասավ Դերջան, ընդառաջ եկան նրան իսմայելացի այրերը և իրենց զորապետից[2] նրան նամակ հանձնեցին, որ գրված էր այսպես. «Հայաստանն իմն է, մի՛ գնա այնտեղ, ապա թե գնաս, ես կգամ քեզ վրա և այնպես կանեմ, որ այնտեղից չես կարողանա փախչել»: Իսկ Կոստանդին արքան ասաց. «Երկիրն իմն է. ես գնում եմ, եթե դու գաս ինձ վրա, Աստված է արդարության դատավորը»: Եվ այնտեղից գնալով՝ եկավ Կարին քաղաք իր թագավորության 12-րդ և իսմայելացիների տիրապետության 20-րդ տարում[3]:*

*1. Հայ-արաբական պայմանագիրը կնքվել է պարսից Հազկերտ III թագավորի 20-րդ, բյուզանդական Կոստանդ II կայսեր 11-րդ և «իսմայելացիների տերության (Հիջրայի) 19-րդ տարում»: Այսինքն՝ 652 թվականին:*

*2. Այսինքն՝ Մուավիայից:*

*3. Կոստանդ կայսեր այս արշավանքը կազմակերպվել է 653 թվականին:*

## ԹԵՈՓԱՆԵՍ ԽՈՍՏՈՎԱՆՈՂԸ 652 Թ. ՀԱՅ-ԱՐԱԲԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍԻՆ

***Թեոփանեսը (760–818) ժամանակի աչքի ընկնող բյուզանդական եկեղեցական և քաղաքական գործիչներից է: Իր մահից հետո անգամ սրբացվել է. այդ կապակցությամբ է, որ չարադրվել են եկեղեցու «սուրբ այր» Թեոփանեսի վարքերը:***

***Թեոփանեսի և նրա «Ժամանակագրության» մասին տեղեկությունները տրվելու են «Բյուզանդական աղբյուրները պավլիկյան շարժման մասին» հատվածում (տե՛ս աստ, էջ 466–467):***

### ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ, էջ 55

*Այդ տարին[1] կայսեր դեմ ապստամբություն բարձրացրեց հայոց պատրիկ Պասագնաթեսը[2]: Նա Մուավիայի հետ դաշինք կնքեց և իր*

*Հարազատ որդուն[3] պատանդ տվեց: Կայսրը, տեղեկանալով այդ մասին, եկավ մինչև Կապադովկիայի Կեսարիա քաղաքը, բայց Հայաստանից հույսը կտրած վերադարձավ:*

*1. Հեղինակի ցուցմամբ՝ աշխարհի արարչագործության 6143 և Կոստանդ կայսեր 10-րդ տարին:*

*2. Անշուշտ, խոսքը վերաբերում է Թեոդորոս Ռշտունուն, իսկ թե ինչ է նշանակում Պասագնաթես, մնում է վիճահարույց:*

*3. Այսինքն՝ Վարդ Ռշտունուն:*

## ԱՐԱԲԱ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆՆ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԽԸ.*** *Հունաց Կոստանդին արքան հարյուր հազար զորքով գնաց [արշավեց] Հայաստան և մի քանի օր նստեց Կարին քաղաքում:*

*Այնտեղ ընդառաջ եկան նրան Չորրորդ կոչված Հայքի զորապետներն ու զորքը և մյուս բոլոր զորքերն ու զորապետները, որ գնացել էին Ռշտունական կողմից: Ընդառաջ եկան նրան սպերացիք, Բագրատունյաց իշխանները, Մանանաղիները, Դարանաղիները և ովքեր Եկեղյաց գավառից [էին] և այդ տեղերի ողջ զորքերը. նաև՝ կարինցիները, տայեցիները ու բասենցիները: Այնտեղ ընդառաջ եկան նրան Վանանդի իշխաններն իրենց զորքերով, շիրակացիք, Խորխոռունիները և Դիմաքսենից տան այրերը: Այնտեղ ընդառաջ եկավ նրան Մուշեղ Մամիկոնյանն իր համազգիներով ու ուրիշ այլ իշխաններով, նաև զորքը՝ Այրարատի կողմից՝ Առավեղյանները, Առանյանները, Վարաժնունիները, Գնթունիներն ու Սպանդունիները, նրանց հետ նաև՝ ուրիշները: Ընդառաջ եկավ նրան Ներսես կաթողիկոսը՝ գալով Տայքից: Բոլոր զորապետները թագավորին պատմեցին նաև Ռշտունյաց տիրոջ ապստամբության մտադրությունն ու ցանկությունը և Իսմայելի բանագնացների հաճախակի երթևեկը նրա մոտ: Այնժամ թագավորն ու իր ողջ զորքերը նզովեցին Ռշտունյաց տիրոջը, զրկեցին նրան իշխանական աստիճանից, նրա փոխարեն ուրիշ այր ուղարկեցին և նրա հետ՝ 40 մարդ: Երբ նրանք գնացին հասան նրա մոտ [Թեոդորոսի] բռնեցին նրանց, կապեցին և [ոմանց] տանել տվին Բաղեշի բերդը, իսկ ոմանց՝ Բզնունյաց կղզիները[1]: Ինքը՝ Թեոդորոսը, գնաց մտավ Աղթամար կղզին և այն կողմերի զորքերին հրաման տվեց, որ յուրաքանչյուրը գնա ամրանա իր գավառում: Նրա հետ*

*միաբան էին Վիրքը, Աղվանքն ու Սյունիքը, որոնցից ամեն մեկը, ըստ նրա հրամանի, գնաց իր աշխարհը և ամրացավ այնտեղ: Իսկ Վահևունյաց տեր Թեոդորոսը գրավեց Արփայք բերդը, իսկ նրա որդի Գրիգորը, որը Ռշտունյաց տիրոջ փեսան էր, և Վարազ Ներսեհ Դաշտկարինը ամրացան դրսում[2] և բռնացան գանձերի վրա, քանզի այնտեղ էին աշխարհի՝ եկեղեցու, իշխանների և վաճառականների ողջ գանձերը:*

*Իսկ Կոստանդին արքան, երբ այս լսեց, կամեցավ զորքերի բազմության համար ավար առնել և գնալ ձմեռել Հայաստանում, որպեսզի մեջտեղից վերացնի երկիրը, բայց կաթողիկոսը[3] և Մուշեղ [Մամիկոնյանը] հայոց ամենայն իշխաններով հանդերձ տեղնուտեղը երեսնիվայր ընկան և բազում աղաչանքներով ու արտասվալից պաղատանքներով խնդրեցին ողորմել, որպեսզի իրենց հանցանքներից խպառ չբարկանա և երկիրը կորստյան չմատնի: Անսաց արքան նրանց պաղատանքներին և արձակեց այնտեղից զորքերի բազմությունը, իսկ ինքը 20 հազարով գնաց Այրարատ: Հասնելով Դվին՝ նստեց կաթողիկոսարանում: Մամիկոնեից տեր Մուշեղին արքան կարգեց հայոց հեծյալների զորապետ և նրան երեք հազարով ուղարկեց Սեպհական գնդի կողմերը: Նմանապես իր զորքերից ուղարկեց Վիրք, Աղվանք և Սյունիք՝ քակտելու նրանց միաբանությունը: Մյուս զորքերը նստեցին Արփայքի շուրջը՝ և՛ լեռնակողմում, և՛ դաշտակողմում: Վրացիները թեպետ միաժամանակ չկամեցան հնազանդվել, սակայն հետո ենթարկվեցին ծառայության: Բայց Աղվանքը, Սյունիքը և Սեպհական գունդը[4] չհնազանդվեցին, որոնց ավարառելով՝ նրանք [հույները] տարան՝ ինչ որ գտան և այնտեղից վերադարձան արքայի մոտ:*

***Գլ. ԽԹ.*** *Հունաց Կոստանդին արքան Դվինից գնաց Կոստանդնուպոլիս: Իսկ Ռշտունյաց տեր Թեոդորոսն ու իր փեսան՝ Մամիկոնեից տեր Համազասպը, ապաստանեցին Աղթամար կղզում: [Ռշտունին] իսմայելացիներից իր համար զորքեր խնդրեց, և 7000 մարդ օգնության եկավ նրան: Նրանց նստեցրեց Աղիովիտում ու Բզնունիքում, և ինքը, ելնելով նրանց մոտ, մնաց նրանց մեջ:*

*Սրանից հետո Ռշտունյաց տեր Թեոդորոսը գնաց Դամասկոս՝ Իսմայելի Մավիաս իշխանի մոտ, և ներկայացավ նրան մեծամեծ ընծաներով: Եվ Իսմայելի իշխանը նրան տվեց ոսկեղեն և ոսկեթել հանդերձներ ու նույնօրինակ մի վառ[5]: Իբրև իշխանություն՝ տվեց նրան Հայաստանը, Վիրքը, Աղվանքն ու Սյունիքը մինչև Կապկոհ և Ճորա պահակ և պատվով ուղարկեց նրան[6]: Իսկ նա [Ռշտունին] նրա հետ պայման էր դրել՝ այդ երկրները բերել ի ծառայություն:*

**Գլ. Ծ.** *[Նույն ժամանակ] հայոց իշխանները (որը՝ հունաց բաժնից, որը՝ տաճիկների)՝ Համազասպը[7], Մուշեղը և մյուս բոլորը մի վայր գալով, միաբանվեցին ու միմյանց հետ ուխտ կապեցին[8], որ իրենց մեջ սուր և արյունահեղություն չլինի, և ձմեռային օրերն անցկացրին խաղաղությամբ, որպեսզի նաև շինականներին փրկեն: Քանզի Ռշտունյաց տերը հիվանդացավ, գնաց մտավ Աղթամար կղզի և չէր կարողանում դուրս ելնել կամ ինչ-որ բան մտածել: Երկիրը բաժանեցին՝ ըստ յուրաքանչյուրի հեծյալների թվի, ու կարգեցին ոսկու և արծաթի հարկահավաքներ:*

*Իսկ երբ Ռշտունյաց տերը այդ տեսավ, իսմայելացիներից իր համար զորքեր խնդրեց, որպեսզի հային հարվածի ու հալածի, իսկ վրացիներին կոտորի սրով սուսերի:*

**Գլ. ԾԲ.** *Իսկ Մամիկոնեից տեր Մուշեղը, հունաց դեմ ապստամբելով, հնազանդվեց իսմայելացիներին ծառայության. և նույն տարում Իսմայելի զորքը, որ Հայաստան աշխարհում էր, ծագեիծագ գրավեց ողջ երկիրը[9]: Միաբանվելով՝ Ռշտունյաց տեր Թեոդորոսն ու երկրի բոլոր իշխանները հնազանդվեցին ծառայության և ամեն ձևով չտապում էին կատարել նրանց կամքը, քանզի իրենց վրա անհնարին մահվան երկյուղ կար:*

*Այդ տարի իր եղբոր նախանձի պատճառով մատնության ենթարկվեց երանելի այր աստվածասեր Արտավազդ Դիմաքսյանը և հանձնըվեց անողորմ դահճի՝ Հաբիբ անվանված զորավարի ձեռքը, որը նստում էր Աշնակի Արուճում, և որն սպանեց նրան չարաչար մահով:*

*Ձմեռային ցրտաշունչ օրերն էին, և հույնը նեղում էր նրանց [իսմայելացիներին], իսկ նրանք ցրտին չէին կարողանում ելնել ու պատերազմ տալ նրանց դեմ, ուստի հանկարծակի ելան, գնացին անցան գետով ու առաջանալով՝ ամրացան Ձարեհավանում: Իսկ հույնը, երբ այդ տեսավ, ուշադրություն չդարձրեց նրանց վրա, այլ թալանեց Դվինի բերդը, գնաց Նախճավան և կռիվ մղեց բերդի դեմ, որպեսզի ավարառի այն ևս: Հունաց զորքի զորավարը ոմն Մորիանոսն էր, [որն], ասում էին, հավատարիմ այր է:*

*Արդ՝ երբ հասան գարնանային ժամանակները, Մորիանոսն Իսմայելի զորքի դեմ պատրաստվեց պատերազմի. համառելով մտածում էր իր գործն ավարտել: Տաճիկն արշավեց հույների վրա, որ կռիվ էին մղում Նախճավանի բերդի դեմ. զարկեց նրանց և կոտորեց սրով սուսերի, իսկ մնացածներին փախստյան մատնեց: Մորիանոսը փախչելով՝ գնաց ընկավ Վիրք: Իսկ Իսմայելի զորքը վերադարձավ նրանց մոտից, պաշարեց Կարին քաղաքը և կռիվ մղեց նրանց դեմ, բայց*

*նրանք չկարողացան կռվով դիմադարձ կանգնել նրանց, բացեցին քաղաքի դռները և հնազանդվեցին ի ծառայություն: Մտնելով քաղաք՝ նրանք հավաքեցին ոսկի ու արծաթ և քաղաքի ամբողջ կայքը, կողոպտեցին ողջ Հայոց երկիրը, Աղվանքը, Սյունիքը և թալանեցին բոլոր եկեղեցիները: Պատանդ վերցրեց երկրի գլխավոր իշխաններին և չատերի կանանց, ուստրերին ու դուստրերին:*

*Ռշտունյաց տեր Թեոդորոսը ևս իր համազգիներով գնաց նրանց հետ. տարան իջեցրին նրանց Ասորեստան: Ռշտունյաց տեր Թեոդորոսն այնտեղ մեռավ, և նրա դին բերվեց իր գավառը, ու թաղվեց իր հայրերի գերեզմանում[10]:*

*Հայոց աշխարհի իշխանությունը վարում էր Մամիկոնեից տեր Համազասպը՝ Դավթի որդին՝ բոլոր առումներով առաքինի մի այր: Բայց ընտանեսուն, ուսումնասեր ու ընթերցասեր էր և ոչ, ըստ հայրենի ազգի, զինվորական վարժանքների կարգականոնին հմուտ ու կիրթ. ճակատ չէր մտել և թշնամիների երես չէր տեսել: Եվ արդ՝ սկսեց նախանձախնդիր լինել դեպի հայրենական տան քաջագործությունները, ջերմեռանդ փութով կատարել նաև քաջության գործը՝ նախնիների նման լիովին տիրապետելով զինավարժանքներին, ի վերուստ խնդրելով առաջնորդություն և հաջողություն՝ իր քաջությունն ի կատար ածելու:*

*Իսկ Հայոց Ներսես կաթողիկոսը գնաց թագավորի հետ, ինչպես ավելի վերևում ասացի, և նրա հետ ուղևորվեց Կոստանդնուպոլիս: Կայսրն այնտեղ շուքով ընդունեց նրան. նվերներ տվին և այնտեղից ուղարկեցին իր բնակատեղին. եկավ հանգրվանեց Տայքում, մինչև Ռշտունյաց տերը մեռավ, և դադարեց տաճիկի ասպատակը: Ապա 6 տարվա հալածանքից հետո [կաթողիկոսը] վերադարձավ կրկին իր նստավայրը, հաստատվեց կաթողիկոսության աթոռին: Շտապում էր ավարտել եկեղեցու[11] շինարարությունը, որ կառուցեց Վաղարշապատ քաղաքի ճանապարհի վրա:*

*Նույն տարում հայերը հրաժարվեցին իսմայելացիներին ծառայելուց և կրկին հնազանդվեցին հունաց թագավորին ի ծառայություն: Կոստանդին արքան Մամիկոնեից տեր Համազասպին կյուրապաղատ կարգեց ու տվեց նրան արծաթի գահույք և Հայոց աշխարհի իշխանությունը, այլ իշխանների էլ՝ պաշտոններ, իսկ զորքերին՝ գանձեր:*

*Երբ Իսմայելի արքան տեսավ, որ հայերը հրաժարվեցին իրենց ծառայելուց, բոլոր 1775 պատանդներին, որոնց տարել էին Հայոց երկրից, կոտորեցին սրով սուսերի, փրկվեցին միայն սակավաթիվ մնացածները՝ թվով 22 հոգի, որոնք [այդ պահին] տեղում չէին:*

*Իսկ քանի որ Մամիկոնեից տեր Մուշեղը իսմայելացիների մոտ պատանդության մեջ չորս որդի ուներ, այդ պատճառով չկարողացավ հրաժարվել նրանց ծառայելուց: Եվ Համազասպը պատանդության մեջ մի եղբայր ուներ, բայց իսմայելացիները նրան ու նաև մյուս իշխաններից ոմանց՝ նրանց կանանցով հանդերձ, պահանջեցին տանել իրենց մոտ՝ Ասորիք: Այդ պատճառով, գերադասելով մահը, քան կյանքը, հրաժարվեցին նրանց ծառայելուց և հապճեպ բանագնացությամբ Աղվանից իշխանների ու զորքերի, Սյունյաց աշխարհի իշխանների և իրենց աշխարհի միաբանությամբ հանդերձ (վերջիններս ավելի վաղ Ատրպատականի բնակավայրերի ցուցակի մեջ էին ընդգրկված, մինչև որ վերացավ պարսից թագավորությունը, և տիրեց իսմայելացին, նրանք, դարձյալ հնազանդվելով, միաբանվեցին հայերի հետ) հնազանդվեցին հունաց թագավորին ի ծառայություն: Մուշեղին և իշխաններից չատերին ևս, որ նրա հետ էին, ձերբակալեցին: Արդ՝ մյուս իշխաններին, որոնց ձերբակալել էին, թագավորը հրամայեց ազատ արձակել, բայց Մուշեղին պահանջեց ուղարկել իր մոտ:*

*1. **Բզնունյաց կղզիներ** – նկատի ունի Վանա լճի կղզիները:*

*2. Այսինքն՝ ամրացան բերդից դուրս:*

*3. Նկատի ունի Ներսես Գ Տայեցի կաթողիկոսին:*

*4. Այսինքն՝ Վասպուրականը:*

*5. Տվյալ հատվածում նշանակում է դրոշ:*

*6. Հավանաբար իրադարձությունները տեղի են ունեցել 653 թ. ընթացքում:*

*7. Խոսքը Հայոց իշխան (654-661) Համազասպ Մամիկոնյանի մասին է:*

*8. Փաստորեն սա փորձ էր վերջ դնել անհամաձայնությանն ու քաղաքական տարրաբաժանմանը և միավորել Հայաստանի երկու մասերը:*

*9. Խոսքը 654 թ. Հաբիբ իբն Մասլամայի արշավանքի մասին է:*

*10. Թեոդորոս Ռշտունին մահացել է 654 թվականին:*

*11. Այսինքն՝ Զվարթնոցի Ս. Գրիգոր եկեղեցու:*

## ԲԱԼԱԶՈՒՐԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

***Արաբ նշանավոր պատմագիր Ահմադ իբն Յահյա իբն Ջաբիր Դաուդ ալ Բալազուրին (820-892) ծնվել է Բաղդադում: Սովորել է Դամասկոսում, Հոմսում և Անտիոքում, ստացել հիանալի կրթություն: Պաշտոնավորել է Մուտավաքքիլ խալիֆայի պալատում, եղել միապետի սեղանակիցը (նադիմ):***

***Բալազուրիին հեղինակ է պատմագիտական մի քանի երկասիրությունների, որոնց մեջ չափազանց արժեքավոր է «Ֆուտուհ ալ-Բուլդան» («Երկրների նվաճում») գիրքը: Այն սկսվում է Մուհամմեդ***

*մարգարեի գործունեությանը նվիրված իրադարձություններով, այնուհետև մանրամասն նկարագրվում է Ասորիքի, Ջազիրայի, Եգիպտոսի, Մաղրիբի, Իրաքի, Իրանի ու Հայաստանի գրավումը: Բալազուրիի վկայությունները, որ վերաբերում են Հայաստանին, չափազանց արժեքավոր են և լրացնում են հայ պատմագիրների հաղորդած տեղեկությունները. դրանցից շատերը եզակի են:*

*Բալազուրիի «Երկրների նվաճումը» գրքից ստորև բերված հատվածները տրվում են ըստ Ա. Ն. Տեր-Ղևոնդյանի թարգմանության, որը լույս է տեսել «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». 16. (Արաբական աղբյուրներ. Գ. Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր) մատենաշարով (Երևան, 2005):*

## ԵՐԿՐՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄ

**(Ֆուտուհ ալ-Բուլդան)**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄԸ, էջ 265-272

*Ինձ պատմել են Հայաստանի վիճակին լավատեղյակ մարդկանցից: Սրանց հետ զրուցել եմ և մաս-մաս իրար կցել նրանց խոսքերը:*

*Ասել են, թե Շիմշաթը, Կարնո քաղաքը (Կալիկալա), Խլաթը, Արճեշը (Արջիշ), Ապահունիսը (Բաջունայս) կոչվում էին Չորրորդ Հայաստան (Արմինիա), Վասպուրական նահանգը (Բասֆուռաջան), Դվինը (Դաբիլ), Շիրակը (Սիրաջ), Տայքը (Թայր) և Բագրևանդը (Բաղրավանդ) կոչվում էին Երրորդ Հայաստան (Արմինիա), Վիրքը (Ջուրզան) կոչվում էր Երկրորդ Հայաստան (Արմինիա), իսկ Սիսականը (Սիսագան), Աղվանքը (Առան)՝ Առաջին Հայաստան (Արմինիա): Ասում են նաև, թե միայն Շիմշաթն էր կոչվում Չորրորդ Հայաստան, Կարնո քաղաքը, Խլաթը, Արճեշը և Ապահունիսը կոչվում էին Երրորդ Հայաստան, Շիրակը, Տայքը, Բագրևանդը, Դվինն ու Վասպուրականը կոչվում էին Երկրորդ Հայաստան: Իսկ Սիսականն, Աղվանքն ու Տփղիսը (Տաֆլիս)- Առաջին Հայաստան:*

*Վիրքն ու Աղվանքը խազարների ձեռքում էին, իսկ Հայաստանի մնացած մասերը՝ հոռոմների ձեռքում և կառավարվում էր Արմանիակուսի տերը[1]:*

*... Պատմում են, որ երբ Օսման իբն Աֆֆանը խալիֆա դարձավ[2], գրեց Մուավիային, որը նրա կողմից կառավարիչ էր Ասորիքի, Ջազիրայի ու Սահմանային ամրությունների վրա, հրամայելով նրան Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին ուղարկել Հայաստան, իսկ Հաբիբն*

*աչքի էր ընկել Ասորիքի նվաճման ու հոռոմների դեմ արշավանքների ժամանակ, որի մասին գիտեին թե՛ Օմարը[3], թե՛ Օսմանը և թե՛ Հաջորդը: Ասվում է նաև, թե Օսմանը գրել է ուղղակի Հաբիբին՝ հրամայելով արշավել Հայաստան, սակայն նախորդ տեղեկությունն է հավաստի: Նա ճանապարհ ընկավ վեց հազարով, ասվում է նաև՝ ութ հազարով՝ Ասորիքի ու Ջազիրայի բնակիչներից բաղկացած [զորքով]: Նա հասավ Կարնո քաղաք [Կալիկալա] ու պաշարեց, իսկ բնակիչները դուրս եկան նրա դեմ և նա պատերազմեց ու ստիպեց նրանց քաղաք ապաստանել: Նրանք երաշխավորագիր խնդրեցին հեռանալու, կամ [մնալու դեպքում], ջիզիա վճարելու պայմանով: Շատերը գնացին, հասան մինչև Ռումի երկիրը: Հաբիբը յուրայիններով մի քանի ամիս մնաց, ապա լուր ստացավ, թե Արմանիակուսի պատրիկը մահմեդականների դեմ մեծ զորք է հավաքել և նրան օգնելու նպատակով միացել են նաև ալանները, աբխազները և խազարաց երկրում գտնվող Սամանդարի[5] մարդիկ: Նա գրեց Օսմանին՝ օգնություն խնդրելով, իսկ սա գրեց Մուավիային, որ նրան ուղարկի Ասորիքի ու Ջազիրայի բնակիչներից այնպիսի մարդկանց, որոնք ցանկություն ունեն հանուն հավատի և ավարի կռվելու: Մուավիան նրան (Հաբիբին) երկու հազար մարդ ուղարկեց, որոնց նա բնակեցրեց Կարնո քաղաքում և հողակտորներ տվեց ու հեծյալ կայազոր դարձրեց:*

*Ոմանք պատմում են նաև, թե Սալման իբն Ռաբիան Օսմանի օրոք գնաց Հայաստան, գերեվարեց, ավար վերցրեց և ապա 25 (28 հոկտեմբեր 645 – 16 հոկտեմբեր 646) թվականին հեռացավ ալ-Վալիդ իբն Ուկբայի մոտ, որը Հաղիսաթ ալ-Մաուսիլում (Մոսուլի մոտ Հաղիսա) էր: Այստեղ ստացավ Օսմանի նամակը, որ հայտնում էր, թե Մուավիան գրել է հիշեցնելով, որ հոռոմները մեծ բազմությամբ հարձակվել են մահմեդականների վրա և օգնություն է խնդրում: Նա հրամայում էր, որ ութ հազար մարդ ուղարկի և սա ուղարկեց՝ Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիի հրամանատարության տակ: Մուավիան նրա հետ ուղարկեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրիին, նույնքան զորքով, և նրանք միասին բերդեր գրավեցին, գերեվարեցին, սակայն իրար հետ վիճեցին հրամանատարության հարցով: Սակայն առաջին տեղեկությունն է ստույգ, որն ինձ պատմել են Կարնո քաղաքի բնակիչ ծերունիներից (շեյխերից) շատեր և այդ մասին ինձ գրել է նրա դատավոր ալ-Աթթաֆ իբն Սուֆիան Աբու-լ-Ասբաղը:*

*Ինձ պատմել է Մուհամմադ իբն Սաադը, լսելով Վակիդիից, իսկ սա Աբդ ալ-Համիդ իբն Ջաաֆարից և սա իր հորից, թե Հաբիբ իբն Մասլաման պաշարեց Դվինի բնակիչներին և բանակ դրեց նրա շուրջը:*

*Նրա դեմ դուրս եկավ Հոռոմ Մավրիանոսը (Մաուրիան ալ-Ռումի)[5], սակայն [Հաբիբը] գիշերով հարձակվեց նրա վրա, կոտորեց ու կողոպտեց նրա ճամբարը: Ապա եկավ Սալմանն ու միացավ նրան, բայց ճշմարտությունն այն է, որ նրան միացավ (հանդիպեց) Կարնո քաղաքում:*

*Ինձ պատմել են, թե Կարնո քաղաքը նվաճման օրից մնացել էր անառիկ ու պաշտպանված իր բնակիչներով հանդերձ, մինչև որ եկավ Բռնակալը[6] 133 (9 օգոստոս 750 – 29 հուլիս 751) թվականին ու պաշարեց Մալաթիայի բնակիչներին, ավերեց նրա պարիսպը և այնտեղ բնակվող մահմեդականներին վտարեց Ջազիրա: Ապա կանգ առավ Մար ալ-Հասա կոչված վայրում և ուղարկեց հայազգի Գուսանին (Քուսան ալ-Արմանի): Նա եկավ պաշարեց Կարնո քաղաքը, որի բնակիչներն այդ ժամանակ փոքրաթիվ էին, իսկ կառավարիչն էր Աբու Քարիման: Կարնո քաղաքի հայ բնակիչներից երկու եղբայրներ ծակելով նրա պարսպի մեջ եղած մի ճեղքվածք, դուրս եկան Գուսանի մոտ և նրան քաղաք մտցրեցին: Սա գրավեց քաղաքը, կոտորեց, գերեվարեց ու ավերեց և, ինչ որ կարող էր, տարավ Բռնակալի մոտ, իսկ ավարը բաժանեց իր ընկերակիցներին:*

*Պատմել է Վակիդին, որ 139 (5 հունիս 756 – 24 մայիս 757) թվականին Մանսուր [խալիֆան] փրկագնով վերցրեց Կարնո քաղաքի բնակիչներից ողջ մնացած գերյալներին: Նա վերակառուցեց Կարնո քաղաքը, շենացրեց ու վերստին բնակեցրեց գերությունից փրկագնածներին: Այստեղ բերեց Ջազիրայից և այլ վայրերից զորքեր: Ռումի բռնակալը Մուտասիմ Բիլլահ խալիֆայի օրոք հարձակվեց Կարնո քաղաքի վրա և սկսեց նրա պարիսպը քարերով հարվածել, այնպես որ քիչ էր մնացել փուլ գար: Ապա Մուտասիմ [խալիֆան] նրա համար ծախսեց հինգ հարյուր հազար դիրհեմ ամրացնելու նպատակով:*

*Պատմում են, որ երբ Հաբիբը գրավեց Կարնո քաղաքը, առաջ խաղաց և բանակ դրեց Մարդաղիում (Մարբալա) և ահա նրա մոտ եկավ Խլաթի պատրիկը Իյադ իբն Ղանմի գրությամբ: Իյադը նրան երաշխավորել էր անձի, ունեցվածքի ու երկրի համար և ճանաչել նրա տիրույթները հարկի դիմաց: Հաբիբը հաստատեց այն: Ապա նա իջավ մի կայանում Հարքի (Հարաքի) ու Վարագա դաշտի (Մարջ ալ-Վարակի) միջև, ուր նրա մոտ եկավ Խլաթի պատրիկը, բերեց իր վրա դրված հարկերը և ընծաներ նվիրեց, որը նա (Հաբիբը) չընդունեց: Նա իջավ Խլաթ, ապա շարժվեց դեպի Սիփան (ալ-Սիբանա), ուր նրան դիմավորեց Մոկսի (Մուքս) տերը, որը Վասպուրականի գավառներից է: [Հաբիբը] ճանաչեց նրա տիրույթներն այդ երկրում (գավառում), նրա*

հետ մարդ ուղարկեց և նրա համար խաղաղության թուղթ և երաշխավորագիր տվեց: Նա Արճեշի ու Ապահունիսի գյուղերը մարդկանց ուղարկեց նվաճելու և նրանց բնակչությունից՝ ըստ գլխի ջիզիա գանձելու համար: Նրա մոտ եկան նրանց մեծամեծները և նա ճանաչեց նրանց իրավունքները խարաջ վճարելու պայմանով: Իսկ Տառեխի (Թիրիխ) լճին[7] ձեռք չտվեց և այսպես ազատ մնաց, մինչև որ Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ դարձավ և իրեն վերապահեց ձկնորսության իրավունքն ու վաճառում էր ձգտելով շահագործել այն: Ապա անցավ Մարուան իբն Մուհամմադին, որից և վերցվեց [Աբբասյանների կողմից]:

Ապա Հաբիբն առաջ շարժվեց ու հասավ Արտաշատ (Արդխաթ), որը Որդան կարմրի գյուղն է (Կարիատ ալ-Կիրմիզ), անցավ Աքրադ գետը[8], կանգ առավ Դվնա դաշտում ու հեծյալների ուղարկեց քաղաքի դեմ: Ապա հարձակվեց ու կանգ առավ նրա դռների առջև: Բնակիչները պաշտպանվեցին նետեր տեղացնելով, իսկ նա քարանետ մեքենաներ դրեց ու քարկոծեց նրանց, այնքան որ երաշխավորագիր ու հաշտություն խնդրեցին և նա տվեց: Նրա հեծյալները գնացին ու կանգ առան Գառնիի առջև և ապա հասան Աշոցք (Աշուշ), Ջատ ալ-Լուջում (սանձերի վայր) լեռը և Ազատաց (Ահրար) հովիտը և նվաճեցին Դվինի բոլոր գյուղերը: Նա մարդ ուղարկեց Շիրակ-Տայք ու Բագրևանդ ու եկավ նրանց պատրիկը և նա հաշտություն կնքեց այդ [գավառների] համար, այն պայմանով, որ հարկ վճարեն, մահմեդականներին խորհուրդներ տան, հյուրընկալեն և օգնեն թշնամիների դեմ:

Դվինի հաշտության պայմանագիրն հետևյալն էր.

«Հանուն ամենագութ, ամենողորմ Ալլահի: Սա է Հաբիբ իբն Մասլամայի գիրը Դվինի քրիստոնյա բնակիչներին, գրադաշտականներին, հրեաներին, նրանց ներկաներին ու բացականերին առ այն, որ երաշխավորում եմ ձեր անձերը, ունեցվածքը, եկեղեցիները, տաճարները և քաղաքի պարիսպները: Դուք ապահովության մեջ կլինեք և մենք պարտավոր ենք հավատարիմ մնալ այս ուխտին, ինչքան ժամանակ, որ դուք էլ հավատարիմ կլինեք՝ վճարելով ջիզիան ու խարաջը: Սրան վկա է Ալլահը և նա բավական է իբրև վկա»:

Կնքեց Հաբիբ իբն Մասլաման:

Ապա Հաբիբը եկավ ու Նախճավանը գրավեց և Դվինի հաշտության պայմանագրի նմանը տվեց: Նրա մոտ եկավ Վասպուրականի պատրիկը և նա հաշտություն խնդրեց նրա ամբողջ երկրի համար և գոհացրեց նրա զինված ջոկատներին ու ընտիր ձիավորներին տարեկան հարկի դիմաց:

*Հետո [Հաբիբը] եկավ Սիսական, որի բնակիչները կռվեցին, սակայն նա հաղթեց նրանց ու գրավեց Վայքը և Սիսականի ամրոցի բնակիչների հետ հաշտության դաշինք կնքեց՝ խարաջ վճարելու պայմանով:*

*1. Խոսքը հավանաբար վերաբերում է բյուզանդական Արմենիակների բանակաթեմին, որը կառավարում էր ստրատեգոսը:*

*2. Օսմանը խալիֆա է եղել 644-656 թվականներին:*

*3. Խոսքը Խալիֆա Օմարի I-ի (634-644) մասին է, որի օրոք են կազմակերպվել առաջին և երկրորդ արշավանքները դեպի Հայաստան:*

*4. Սամանդարը խազարների մայրաքաղաքն էր:*

*5. Սա բյուզանդական Մավրիանոս զորավարն էր, որը 640 թվականին նշանակվել էր Հայաստանում գտնվող բանակների գլխավոր հրամանատար:*

*6. Նկատի ունի Բյուզանդիայի ժամանակակից կայսրին:*

*7. Նկատի ունի Վանա լիճը:*

*8. Այսինքն՝ Մեծամոր գետը:*

## ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ՂԵՎՈՆԴԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Դ.*** *Մուավիայի իշխանության առաջին տարում և Հերակլեսի թոռ Կոստանդին կայսեր քսանհինգերորդ տարում տաճկաց իշխանն սկսեց զորք գումարել Հայոց աշխարհի դեմ: Այս մասին տեղեկանալով՝ Կոստանդին թագավորը հրամայեց Կիլիկիայի կողմերում գտնվող զորավարին՝ ելնել նրանց դեմ: Նա իշխանությունից հեռացրեց Թեոդորոս իշխանին՝ Պռոկոպ զորավարի հանդեպ գործած նենգության պատճառով և նրա փոխարեն կարգեց ոմն Սմբատի՝ Բագրատունյաց[1] տոհմից և նրան ուղարկեց իր զորավարի հետ: Նա գրեց Թեոդորոս Ռշտունուն, որը նախապես (Հայոց) իշխան էր, ասելով՝ «քո ձեռքի տակ եղած զորքով մեզ հետ ելիր պատերազմի»: Սա չկամեցավ պատերազմի ելնել: Նա երկրորդ անգամ գրեց՝ «եթե մեզ հետ չելնես թշնամու դեմ, ապա այնտեղից վերադարձին քո տունը կջնջենք մեր ազգատոհմերի միջից»:*

*Վախենալով սպառնալիքից՝ [Թեոդորոսը] սպառազինեց իր որդի Վարդին, որպեսզի գնա Սմբատ իշխանի հետ, սակայն պատվիրեց նենգություն գործել բարեկամների դեմ և միաբանել թշնամու հետ: Սա գնաց հունաց զորավարի մոտ, և բոլորը չվեցին Ասորիքի կողմերը, անցնելով Եփրատի ծանծաղուտը: Թեոդորոսի որդին, մերձենալով*

*զորավարին, խնդրեց իրեն նավակամուրջների պահապան կարգել, և սա հրամայեց նրան պահպանել ծանծաղուտի խելերը:*

*Երբ միմյանց դեմ պատերազմ սկսելով՝ նրանք բախվեցին իրար, և երկու կողմերից էլ հարվածներ տեղացին, տաճկաց զորքը դարձյալ զորացավ զատկի մեծ շաբաթ օրը, փախուստի մատնելով հունաց գունդը: Թեոդորոսի որդին հենց որ տեսավ Իսմայելի հաղթանակը, համարձակ գետի այն կողմն անցավ և կտրեց կամուրջի լարերը, որպեսզի փախստականները չփրկվեն, իսկ նրանք (արաբները), շրջապատելով հունաց զորքը, ոմանց գետավեժ արեցին, ոմանք էլ ազատվեցին՝ հունաց երկիրը փախչելով: Այնուհետև հունաց արքան հուսալքվեց, քանզի գիտակցեց, որ Տիրոջից էր իր իշխանության հասած ձախողությունը, և այլևս չհարձակվեց Իսմայելի վրա:*

*Իսկ Իսմայելի իշխանը հրովարտակ գրեց Հայոց աշխարհը, ասելով՝ «եթե ինձ հարկ չվճարեք և իմ իշխանության լծի տակ չմտնեք, ամենքիդ սրով կկոտորեմ»: Այն ժամանակ միասին ժողով գումարեցին Հայոց քահանայապետ Ներսեսը, Սուրբ Գրիգոր (եկեղեցու) շինողը, մեր երկրի իշխաններն ու նախարարները և հանձն առան իսմայելցիների բռնապետությանը հարկ վճարել: Սրանցից պատանդներ խնդրեցին և տվեցին Հայաստանի նախարարներից երկուսին՝ Գրիգորին՝ Մամիկոնյան տնից և Սմբատին՝ Բագրատունի տնից: Սրանց տարան տաճկաց իշխան Մուավիայի մոտ, որը Հայոց աշխարհին տարեկան 500 դահեկան հարկ նշանակեց, որի (փոխարեն) աներկյուղ ապրելու էին իրենց բնակավայրերում:*

*Իշխանության երկրորդ տարում Մուավիան իր մոտ կանչեց Գրիգորին ու Սմբատին, որոնք պատանդ էին արքունի դռանը և Գրիգորին տալով Հայոց իշխանի (Հայաստանի իշխանություն) պատիվը՝ բազում մեծարանքով առաքեց մեր Հայոց աշխարհը:*

*Սրա իշխանության օրերին խաղաղությունն էր տիրում:*

*Իսկ հայոց Գրիգոր իշխանն իր տիրության օրերին[2] մեր Հայոց աշխարհը խաղաղեցրեց ամեն տեսակ թշնամություններից ու հարձակումներից: Նա աստվածերկյուղ մարդ էր, եղբայրասեր, օտարասեր, աղքատների դարմանիչ և աստվածապաշտության հավատքի մեջ կատարյալ: Նա Արագածոտն գավառի Արուճ ավանում շինեց աղոթից մի տուն, Տիրոջ անվան փառքի տաճար, գեղեցիկ վայելչակազմ զարդարված՝ ի հիշատակ իր անվան:*

*Տաճիկների միջև տեղի ունեցող պատերազմի ժամանակ հարկատվությունից դադարեցին Հայաստանը, Վիրքն ու Աղվանքը, երեսուն տարի ծառայելուց հետո: Նրանք երեք տարի ապստամբ մնացին: Իսկ*



***Հայոց իշխան Գրիգոր Մամիկոնյանի արձանագրությունը Արուճի Ս. Գրիգոր եկեղեցու պատին (668 թ.)***

*չորրորդ տարում մեր Հայոց աշխարհին տիրեց հյուսիսային ազգը, որ կոչվում էր խազիրներ[3]: Նրանք պատերազմում սպանեցին Գրիգոր իշխանին, բազում նախարարների և վրաց ու աղվանից իշխաններին: Ասպատակ սփռելով մեր Հայոց աշխարհը՝ բազում գավառներ և ավաններ գրավեցին, ապա վերցնելով ավարը և գերյալներին՝ գնացին իրենց երկիրը:*

***Գլ. Ե.*** *Գրիգորի մահվանից հետո իշխանությունն անցնում է Աշոտ պատրիկին[4], որը երևելի այր էր, Հայաստանի նախարարների մեջ՝ նախամեծար: Նա Բագրատունյաց տոհմից էր, ճոխ և պերճ իշխանությամբ, իսկ երկրային վարքով միշտ զգաստ էր, առաքինասեր, ամենքից ավելի ազնվական և ծանոթ Աստուծո երկյուղին, հոգատար էր ամեն տեսակ բարեգործության, ջանասեր՝ ուսումնառության մեջ:*

*[Հունաց] Հուստինիանոս կայսրը[5] իր թագավորության երկրորդ տարում և Աշոտ պատրիկի իշխանության ժամանակ բազում զորքեր առաքեց Հայոց աշխարհի դեմ, որոնք ավերեցին մեր երկիրն ավարառությամբ: Բազում հոյակերտ շինվածքներ, հրի մատնելով՝ ավերեցին և ապա վերադարձան իրենց երկիրը:*

*... Աշոտ Բագրատունին իշխանությունը չորս տարի պահեց, իսկ*

*իշխանության չորրորդ տարում Իսմայելի որդիների մի գունդ ասպատակությամբ հարձակվեց մեր Հայոց աշխարհի վրա: Սրանք հանցանքի որդիներ էին, անօրենության զավակներ և անիրավություն էին գործում Մարաց [կոչված] ավաններում՝ Խրամում, Ջուղայում և Խոշակունքում: Տղամարդկանց հարկապահանջությամբ խոշտանգում էին, իսկ կանանց զազրելի պղծությամբ կամենում էին խայտառակել, ըստ իրենց անօրենության:*

*Նրանց չարագործության համբավը հասավ Աշոտ իշխանին, որն անմիջապես հրաման տվեց [հայոց] զորքերին ելնել նրանց դեմ: Ամենքին հարվածելով՝ հայերը սրով կոտորեցին ու մնացորդներին փախուստի մատնեցին: [Իսկ] Աշոտ իշխանը սակավ մարդկանցով հետապնդելով՝ գնում էր նրանց հետևից: Թշնամիները, իրենց զորացած զգալով, դարձան նրա կողմը և հարվածելով վիրավորեցին Հայոց իշխանին: Ապա ճիչ բարձրացավ [հայոց] զորքի մեջ և շուտափույթ հասան ու թշնամուն հարվածելով կոտորեցին: Վերցնելով իշխանին՝ նրանք [հայոց զորքերը] նրան բերեցին Կոգովիտ՝ կարեվեր խոցված վիճակում: Այնտեղ մահճում փառավորապես վախճանվեց ու թաղվեց իր հանգստյան կացարանում՝ Դարույնք գյուղում:*

*Գլ. Զ. Դարձյալ զորք ուղարկեց հունաց արքան, որին Ափսիմերոս էին կոչում[6], Հուստինիանոս կայսեր հաջորդը, և հրամայեց բռնել Սմբատին, Վարազտիրոցի որդուն, որն իբր քինախնդիր էր եղել հունաց զորքից ոխ պահելով իր հոր՝ Վարազտիրոցի, մահվան համար, որին սպանել էին հոռոմները: Գնալով՝ պատերազմեցին նրա դեմ Պայիկ կոչված ճահճուտ դաշտում: Հայոց զորքը բազում հարվածներ կրեց, քանզի փոքրաթիվ էր, հունաց զորքից էլ շատերն ընկան:*

*Երբ Սմբատը տեսավ, որ չի կարող դիմադրել հունաց զորքին, փախուստի դիմեց և սակավ մարդկանցով հեռացավ, իսկ հունաց զորքը դարձավ իր երկիրը:*

*Գլ. Է. Աբդլ-Մելիքի իշխանության տասնվեցերորդ տարում[7] դարձյալ նրա սիրտը չարասեր սատանայից գրգռվեց, և նա հրամայեց իր զորքերին հարձակվել մեր երկրի վրա: Սրանց զորագլուխն էր արյունարբու և դիվահար Մահմետը[8], որը երդմամբ անօրինության դաշինքն էր կնքել իրենց իշխանի հետ՝ իր սուրը պատյան չդնել մինչև մեր երկրի սիրտը ներթափանցելը: Նա խրոխտալով գնաց հասավ մինչև Ջերմաձոր գավառը և ում որ հանդիպում էր՝ սուրը գործի դնելով անխնա կոտորում էր, ըստ իրենց խոստման: Շատերը, առաջվանից տեղյակ լինելով, քաշվել էին, ապաստանելով բերդերի ամրոցները: Նա բազում ամրոցներ խաբեությամբ գրավեց, քանզի կեղծ խոս-*

*քերով խաղաղության կոչ էր անում, սակայն երբ վստահելով՝ իջնում էին ամրոցներից, սուրը գործի դնելով կոտորում էր տղամարդկանց, իսկ կանանց ու մանուկներին գերեվարում: Նա բազում նեղություն և տագնապ պատճառեց մեր երկրին, այնքան, որ մարդիկ [մահը] նախընտրելով այսպիսի տառապանքներով ապրելուց՝ երանի էին տալիս մեռյալներին, որոնք խաղաղ մահվամբ աշխարհից հեռացել էին:*

***Գլ. Թ.*** *Իսմայելի իշխան Աբդլ-Մելիքն իր մոտ կանչեց զորքերի հրամանատար Մահմետին ու հրամայեց մեծ զորք հավաքել ու հարձակվել Հայոց աշխարհի վրա, սրի քաշել ու գերեվարել[9]:*

*Սա չուտափույթ զորք հավաքեց և սաստկապես խրոխտալով՝ սպառնում էր իրենց իշխանի հրամանը կատարել: Երբ Հայաստանի նախարարները լսեցին զորավոր թշնամու գալուստը, պատրաստեցին Հայոց կաթողիկոս Սահակին[10] և նրա հետ մեր երկրի եպիսկոպոսներից ոմանց, որպեսզի ընդառաջ գնան Իսմայելի զորքերին, նրանց զորավարի հետ խաղաղության մասին բանակցելու և ընդունելու նրանց հպատակության լուծը: Ճանապարհ ընկնելով մեր երկրի միջով, նա ամենքին ողջունում էր սիրալիր աջահամբույրով, օրհնում էր իրեն վստահված հոտը, հովվակից [եկեղեցականներով] հանդերձ, հանձնելով նրանց Տիրոջ ողորմածությանը: Երբ, բազում օթևաններ անցնելով հասավ Խառան քաղաքը, այնտեղ հիվանդացավ և, նախքան Մահմետ զորավարի ժամանելը, մերձեցավ նրա վախճանը: Անդարձ մահվանից առաջ նա գրեց իր վերջին խոսքերը Իսմայելի զորավարին:*

*«Ես,– ասում է,– առաքված եմ քեզ մոտ իմ ազգի կողմից, իմ խորհուրդները քո առջև պարզելու, որ Հայաստանի նախարարներն ու ռամիկները միաբան խնդրում են քեզանից: Սակայն նա, որ կյանքի չտեմարանապետն է, ինձ վաղաժամ խլեց իր մոտ ու ժամանակ չտվեց հանդիպելու և խոսելու քեզ հետ: Արդ, երդվեցնում եմ քեզ կենդանի Աստուծով և դաշինք եմ կնքում քեզ հետ, ըստ ձեր նախահայր Իսմայելի հետ Աստուծո կնքած ուխտի, որով խոստացավ տալ տիեզերքը ի ծառայություն և ի հնազանդություն, որպեսզի իմ ժողովրդին խաղաղություն տաս, և նա քեզ կհպատակվի հարկատվությամբ: Եվ պահիր քո սուրը արյունահեղությունից ու քո ձեռքը՝ ավարառությունից, և քեզ կհնազանդվեն [հայերը] իրենց ամբողջ սրտով: Իսկ մեր հավատքի հարցում՝ թող մենք հնարավորություն ունենանք պահպանելու այն, որին հավատացել և խոստովանել ենք, և թող ձերոնցից ոչ ոք չխոչտանգի մեզ՝ ստիպելով հավատափոխ լինել: Արդ, եթե իմ խնդրածը կատարես, Տերը կամրապնդի քո իշխա-*

*նությունը և քո ցանկությունները կկատարվեն, և Տերն ամենքին կհնազանդեցնի քեզ: Իսկ եթե չկամենաս լսել իմ խոսքերը և հակառակ դրանց հարձակվես իմ երկրի վրա, Տերը քո մտադրությունը կցրի, քո ոտքերի ընթացքը չի հաստատի, քո զորքի սիրտը չուռ կտա, որպեսզի չկատարեն քո կամքը, ամեն կողմից քեզ համար նեղիչներ կհարուցի, և հաստատուն չի լինի քո իշխանությունը: Արդ, անտես մի առնի իմ խնդրանքները, և քեզ վրա կգան իմ օրհնությունները»:*

*Երբ Մահմետը Խառան հասավ, պատմեցին նրան Հայոց կաթողիկոսի մասին և մատուցեցին գրվածքը: Երբ կարդաց, հարցրեց նրա վախճանի մասին, և պատմեցին նրան, թե՝ «դեռ չի դրված գերեզման», քանզի նոր էր վախճանվել: Երբ լսեց, անմիջապես վեր կացավ և այնտեղ գնաց. կանգնելով ննջեցյալի մարմնի մոտ՝ ողջույն տվեց, ըստ իրենց սովորության: Ինչպես լսել ենք ճշմարտախոս մարդկանցից, նա երկրորդեց և երրորդեց նույն խոսքերը: Ապա նրա ձեռքը բռնելով որպես կենդանի մարդու, խոսեց՝ ասելով. «Ճանաչեցի քո իմաստությունն այն մատյանից, որ ընթերցեցի, քանզի ըստ օրենքի, որպես քաջ հովիվ հոգալով քո հոտի մասին, փութացիր ընդառաջ գալ իմ խրոխտացող սրին: Համաձայն եմ իմ սուրը ետ պահել անմեղ մարդկանցից: Արդ, կկատարեմ և կանեմ ամեն ինչ, որ այնտեղ հայցել ես ինձանից, և քո բարեպաշտ օրհնությունը թող իջնի իմ վրա: Իսկ եթե քո խոսքերից որևէ մեկը չկատարեմ, թող իմ վրա գան այն բոլոր նզովքները, որ կարդացի քո մատյանի մեջ»:*

*Այս ասելով գնաց իր իջևանը:*

*Իսկ ովքեր Սահակ կաթողիկոսի հետ գնացել էին Հայոց աշխարհից, առնելով երանյալ հայրապետի մարմինը, տարան գերեզման և փառավորապես տապանի մեջ դրեցին: Նրանք Իսմայելի զորավարից գրավոր երդման խոսք վերցրին և վերադարձան Հայոց աշխարհ: Երբ մեր երկրի բնակիչները տեսան երդման և խոստումի գրավոր խոսքը, հավատացին նրան և այնուհետև ստրկական ծառայությամբ ծառայեցին իսմայելացիներին:*

*Աբդլ-Մելիք իշխանի տասնութերորդ տարում Մահմետ զորավարը մեծ զորքով երկրորդ անգամ ելավ Հայոց աշխարհը և երեք տարի հանդարտ սպասեց ու ոչ ոք մի վատ բան չէր հիշեցնում այն անցքերի մասին, որոնք պատահեցին տաճկաց զորքի հետ Վարդանակերտ ավանում, այլ հաստատուն էր պահում այն գրավոր երդումը, որ ինքն էր տվել և միայն թաքուն հետևում էր Հայաստանի նախարարներին:*

*Այս ձևով վարելով իր իշխանությունը Աբդլ-Մելիքը վախճանվեց:*

***Գլ. Ժ.** Իր իշխանության առաջին տարում [Վլիթ խալիֆան][11]*

*խորհեց մեր Հայոց աշխարհից վերացնել նախարարական տոհմերն իրենց հեծյալների հետ միասին, այն քենի պատճառով, որ նրանք (արաբները) ունեին Սմբատ կյուրապաղատի դեմ: Նա ասում էր, թե «նրանք միշտ խոչընդոտ և գայթակղություն կլինեն մեր իշխանությանը»: Իսկ մինչդեռ այս չարությունն էին երկնում իրենց սրտերում, հենց այդ ժամանակ Սմբատը, որի մասին խոսել ենք, անմիջապես գրեց հունաց արքային և նրանից օգնական զորք խնդրեց: Կայսրը, հավանելով կատարեց նրա խնդրանքը, բազում զորք դրեց մի զորավարի հրամանատարության տակ և որպես օգնություն առաքեց նրան: Սմբատը և հունաց զորավարը միանալով՝ եկան հասան Վանանդ գավառը, այն գյուղը, որ Դրաշպետ է կոչվում, այնտեղ նրանք բանակ դրեցին:*

*Երբ Իսմայելի զորքի իշխանը՝ Մահմետը, լսեց այդ մասին, հավաքեց իր զորքը և մեծ պատրաստությամբ նրանց դեմ պատերազմի ելավ: Իրար մոտ հասնելով՝ նրանք գունդ առ գունդ և ճակատ առ ճակատ դասավորվեցին և պատրաստվեցին պատերազմի: Այնտեղ շուտով Տիրոջ բարկությունը նրանց վրա հասավ, հունաց պատերազմող ռազմիկների սիրտը թուլացավ և, փախուստի դիմելով, ընկան իրենց ամրացված բանակատեղին: Իսկ թշնամիները զորանալով, չաթերին սրով կոտորեցին, և ասում են, թե ավելի քան 5 բյուր սուսերամերկ ռազմիկներ սպանվեցին: (Մահմետը) նրանց սակավաթիվ մնացորդներին մեր երկրից փախստական դարձրեց և, հավաքելով իր զորքը՝ դարձավ Դվին քաղաք: Երբ Իսմայելի իշխանը տեսավ, թե ինչպես հայ նախարարները հունաց զորքի առաջնորդներ եղան, Մահմետին հրամայեց նույն նենգ խորհուրդը (մտադրությունը) ի կատար ածել:*

*Ստանալով անիրավ հրամանը, Մահմետը կարգադրեց ոմն Կասիմի, որը հրամանատար էր Նախճավան քաղաքի կողմերում, իր մոտ կանչել Հայաստանի նախարարներին, իրենց հեծյալներով մեկտեղ, պատճառաբանելով, թե իբր արքունի մարդահամարից պետք է անցնեին, հոռգ[12] ստանային և վերադառնային: Իսկ նրանք, սովորական պարզամտությամբ, հավատալով գաղտնի դավող-որսողների նենգությանը, անմիջապես այնտեղ ժամանեցին: Երբ հավաքվեցին, նա հրամայեց նրանց երկուսի բաժանել. ոմանց հավաքեցին Նախճավանի եկեղեցում, իսկ մյուս կեսը ուղարկեցին Խրամ ավանը և նրա եկեղեցին նետելով՝ նրանց վրա պահապաններ կարգեցին և խորհում էին, թե ինչպես ոչնչացնեն նրանց: Բոլորին հավաքելով, ազատատոհմ մարդկանց դուրս բերեցին արգելարանից, իսկ նրանց, որ*

*սրբարանում արգելափակված էին, հրկիզեցին ու տոչորեցին աստվածային խորանի կամարների տակ:*

*Իսկ ազատանի նախարարներին բանտի կապանքների մեջ դրին, անհանդուրժելի խոշտանգումների ենթարկեցին, նրանցից պահանջելով բազում ոսկի և կշռով արծաթ: Խոստացան, որ երբ արծաթի սակը վճարեն, նրանց կենդանի կարձակեն: Այս բանի համար երդումով դաշինք կնքելով՝ հաստատում էին իրենց սուտ խոստումը: Իսկ սրանք նեղության վտանգի մեջ իրենց բազում մթերված գանձերը, որ նեղիչներից թաքցնելով պահեստի էին դրել թե՛ ծովի մեջ, թե՛ ցամաքի վրա, տվին թշնամու ձեռքը, որ գուցե կարողանան իրենց անձերը փրկել: Երբ իրենց գանձերից զրկվեցին, անօրենները ձեռք գարկեցին նրանց և սպանեցին [կախաղանի] փայտից կախելով: Այնտեղ զոհվեցին Աշոտի որդի Սմբատը Բագրատունի տոհմից, Գրիգորը և Կորյունը Արծրունի տոհմից, Վարազ Շապուհն ու եղբայրը Ամատունի տոհմից և շատ ուրիշներ Հայաստանի նախարարներից, որոնց մեկ առ մեկ չեմ կարող հիշել: Նրանց բոլորին կյանքից զրկելով՝ մեր երկրում նախարարներից ժառանգորդներ չմնացին:*

*1. Խոսքը Վարազտիրոց Բագրատունու որդի Սմբատի մասին է:*

*2. Գրիգոր Մամիկոնյանը Հայոց իշխան է եղել 661-685 թվականներին:*

*3. Խազարների արշավանքը տեղի է ունեցել 684 թվականին:*

*4. Հայոց իշխան Աշոտ Բագրատունի (685-689):*

*5. Խոսքը Բյուզանդիայի Հուստինիանոս II (685-695, 705-711) կայսեր մասին է:*

*6. Խոսքը Բյուզանդիայի Տիբերիոս III կայսեր (698-705) մասին է: Իրականում Հուստինիանոս II-ի առաջին գահակալությունից հետո կայսր է հռչակվել ոչ թե Տիբերիոս III-ը, այլ Լեոնտիոսը (695-698):*

*7. Աբդ ալ-Մալիք խալիֆայի (685-705) 16-րդ տարին 701 թվականն է:*

*8. Սա նշանավոր զորավար Մուհամմադ իբն Մրվանն է, Աբդ ալ-Մալիք խալիֆայի կրտսեր եղբայրը: 701 թ. նա մեծ արշավանք է ձեռնարկել դեպի Հայաստան և վերջնականապես նվաճել այն:*

*9. Արաբների այս երկրորդ արշավանքին նախորդել է Սմբատ Բագրատունու գլխավորությամբ տեղի ունեցած ապստամբությունը 703 թ., որի ընթացքում արաբները սոսկալի պարտություն են կրել Վարդանակերտի ճակատամարտում:*

*10. Խոսքը Սահակ Գ Ձորոփորեցի կաթողիկոսի (677-703) մասին է:*

*11. Վլիթ I խալիֆան իշխել է 705-715 թվականներին, հետևաբար խոսքը 705 թվականի մասին է:*

*12. Այսինքն՝ ռոճիկ, որն այն ժամանակներում նշանակում էր պարգև:*

**ԽԱԼԻՖԱ ԻԲՆ ԽԱՅՅԱԹԸ «ԿՐԱԿԻ ՏԱՐՎԱ» (705 Թ.) ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ**

***Խալիֆա իբն Խայյաթն արաբ նշանավոր պատմագիր է: Ծնվել է 776 կամ 777 թվականին Իրաքի Բասրա քաղաքում: Ուսումնառությունն անց է կացրել ծննդավայրում, ստացել է ժամանակի համար փայլուն ու բազմակողմանի կրթություն: Երխտասարդական տարիներից հրապուրվել է պատմությամբ: Հեղինակել է «Կենսագրությունների դասակարգում», «Պատմություն» և այլ երկասիրություններ: «Պատմություն»-ը դեռևս միջին դարերում կորած էր համարվում: Սակայն 1963 թ. այն հայտնաբերվեց Մարոկկոյի մի հեռավոր մենաստանում: 1967 թ. այն առաջին անգամ հրատարակվեց Բաղդադում, որին հետևեցին բազմաթիվ այլ հրատարակություններ և օտարալեզու թարգմանություններ: Ստորև բերվող հատվածի հայերեն թարգմանությունը կատարել է Ա. Տեր-Ղևոնդյանը (տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». Արաբական աղբյուրներ. Գ. Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր, Երևան, 2005):***

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***ՈՒԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ[1]***

**(26 փետրվար 700 -14 փետրվար 701)**

*Այդ տարում Աբդ ալ-Մալիքն իր եղբորը՝ Մուհամմադին ուղարկեց Հայաստան և այնտեղ բնակիչները դիմադրեցին նրան, իսկ Մուհամմադը հաղթեց նրանց: Ապա հայերը հաշտություն խնդրեցին և նա հաշտության պայմանագիր կնքեց և նրանց կառավարիչ նշանակեց Նաբիհ իբն Աբդալլահ ալ-Անազիին[2]: Նրանք [հայերը] դավաճանեցին ու սպանեցին ալ-Անազիին:*

***ՈՒԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ***

**(4 փետրվար 702 -23 հունվար 703)**

*Այդ տարում Աբդ ալ-Մալիքը իր եղբորը՝ Մուհամմադին ուղարկեց Հայաստան և նրանք [հայերը] հաշտության պայմանագիր ստացան: Նա Հայաստանի կառավարիչ նշանակեց Աբու Շայխ իբն Աբդալլահ ալ-Ղանավիին[3] և Ամր իբն ալ-Սադի ալ-Ղանավիին[4], սակայն երկուսին էլ [հայերը] դավաճանեցին ու սպանեցին:*

## ՈՒԹՍՈՒՆԶՈՐՍ ԹՎԱԿԱՆ

**(24 հունվար 703 –13 հունվար 704)**

*[Այդ տարի] հոռոմները հարձակվեցին Հայաստանի վրա՝ Մուհամմադ իբն Մրվանի դեմ: Ալլահը պարտության մատնեց նրանց և դա կրակի (հրդեհի) տարին է[5]: Բանն այն է, որ Մուհամմադը [83 թվականի] պարտությունից հետո [հայերի դեմ] ուղարկեց Օսման իբն ալ-Սարաջ ալ-Հադրամիին և նրանք վառեցին նրանց [հայերին] իրենց եկեղեցիներում, տաճարներում և գյուղերում: Հրկիզումը կատարվեց Նախճավանում (Նաշավա) և Վասպուրականում (Բասփուռաջան):*

*1. Տարեթիվը նշվում է ըստ Հիջրայի թվականի:*

*2. Սա հայկական սկզբնաղբյուրների Հայաստանի կառավարիչ Աբդալլահն է:*

*3. Ալ-Ղանավին Հայաստանի կառավարիչ է եղել 701-703 թվականներին և սպանվել է հայերի 703 թ. ապստամբության ժամանակ:*

*4. Ամր իբն ալ-Սադին ևս սպանվել է 703 թ. ապստամբության ժամանակ:*

*5. Արաբ բազմաթիվ պատմիչներ են հիշատակում այս իրադարձությունը, այն անվանելով սանատ ալ-հարիկ, այսինքն՝ կրակի տարի:*

### ՅԱԿՈՒԲԻՆ «ԿՐԱԿԻ ՏԱՐՎԱ» ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***Արաբ ականավոր պատմագիր Յակուբին (Աբուլ-Աբբաս Ահմադ ալ Յակուբի) ծնվել է Բաղդադում 830-ական թվականներին, նշանավոր ընտանիքում: Ստացել է ժամանակի համար հիանալի կրթություն, զբաղեցրել բարձրագույն մի շարք վարչական պաշտոններ, եղել Արմինիայի ու Եգիպտոսի կառավարիչ: Շրջագայել է բազմաթիվ երկրներում՝ Եգիպտոս, Պաղեստին, Հնդկաստան, Խորասան, Հայաստան, նյութեր հավաքել իր ապագա երկասիրությունների համար:***

***Մեզ են հասել Յակուբիի երեք երկասիրություններ, որոնցից իր նշանակությամբ հայտնի է «Պատմություն»-ը (Տարիխ): Այն համառոտ շարադրանքով ներկայացնում է աշխարհի բազմաթիվ ժողովուրդների պատմությունը՝ հնագույն ժամանակներից մինչև իր օրերը: Հատկապես արժեքավոր են այդ աշխատության երկրորդ հատորի այն բաժիններն ուր հեղինակն անդրադառնում է Մուհամմադ մարգարեի, նրա անմիջական հաջորդների՝ Օմայանների ու Աբբասյանների պատմությանը:***

***Յակուբին երկասիրել է նաև «Գիրք երկրների» (Քիտաբ ալ-Բուլդան) վարչաաշխարհագրական մի տեղեկատու, որը տարբեր երկրներում իր կատարած դիտումների հանրագումարն է: Սա չափա-***

***զանց արժեքավոր աշխատություն է, բայց ցավոք, Հյուսիսի երկրների բաժնում կա մի մեծ պակասող մաս, որի մեջ է եղել նաև Հայաստանը: Յակուբին մահացել է 897 թվականին Մաղրիբում (Հյուսիսային Աֆրիկա):***

***«Պատմություն»-ից ստորև բերված հատվածի թարգմանությունը (Ա. Ն. Տեր-Ղևոնդյանը), կատարվել է հետևյալ հրատարակությունից՝ Yaqubi, Tarikh, I-II, Beyrouth, 1960: Ամբողջական թարգմանությունը տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». Արաբական աղբյուրներ. Գ. Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր, Երևան, 2005:***

*ՅԱԿՈՒԲԻ*

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Հատոր երկրորդ***

***ՄՈՏԱՎՈՐԱՊԵՍ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ***

**(23 մայիս 692 – 12 մայիս 693)[1]**

*Աբդ ալ-Մալիքը Մուհամմադ եղբորը նշանակեց Մոսուլի կառավարիչ: Ապա Մուհամմադն արշավեց Հայաստան, որի ժողովուրդն ապստամբել էր[2]: Նա կոտորեց ու գերեվարեց և նամակ գրեց երկրի ազնվականներին (աշրաֆ), որոնք ազատներ են կոչվում, երաշխավորագիր տվեց ու խոստացավ պատվի բարձրացում: Ուստի նրանք հավաքվեցին եկեղեցիներում, Խլաթի նահանգում, իսկ Մուհամմադը հրամայեց վառելափայտ հավաքել եկեղեցիների շուրջը, նրանց վրա փակել տվեց դռները և ամենքին վառեց[3]: Մուհամմադ իբն Մրվանը մնաց Հայաստանում մինչև իր մահը[4]:*

*1. Իրադարձությունների խառնաշփոթ կա: Նկարագրվող դեպքերը տեղի են ունեցել ճիշտ 10 տարի անց՝ 703 թվականին:*

*2. Խոսքը 703 թ. ապստամբության մասին է:*

*3. Խոսքը 705 թվականի Նախճավանի և Խրամի դեպքերի մասին է:*

*4. Այսինքն՝ մինչև 709 թվականը:*

## ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑԻՆ 705 Թ. ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՇԽԱՐՀԻ

### *Գիրք Գ*

***Գլ. ԺԶ.*** *Հայոց հարյուր քառասունվեց թվականին Հայաստան է գալիս Մեհմեդ երկրորդը[1]: Այնտեղից Աղվանքով չտապում և մտնում է Զող: Իսկ ապստամբած հայերը[2] արաբներին արգելափակում են Դվինում և դրանցից վաթսուներկու հազար կոտորում են՝ Բյուզանդիայից շատ զորքեր բերելով: Մեհմեդը Զողից վերադարձավ, եկավ, երեք տարի պաշարեց Սևան ծովապատ բերդ-կղզին, ապա գրավեց այն և կղզում ում որ գտավ, սրածեց: Այնտեղից անցնելով Հայաստան՝ կոտորեց բյուզանդական ու հայկական զորքերը: Իսկ նրանց համար, որոնց չկարողացավ բռնել, հանդիսավոր երդումով դարան պատրաստեց. դավով ու խաբեությամբ իր մոտ հավաքեց հայոց իշխաններին և տանելով Նախիջևան քաղաքը, ութ հարյուր մարդ եկեղեցին լցնելով կենդանի-կենդանի այրեց, չորս հարյուր մարդ էլ Խրամում այրեց, իսկ նրանցից մնացածներին սրածելով կոտորեց:*

*1. Նկատի ունի Մուհամմադ իբն Մրվանին, բայց իրականում իրադարձությունները տեղի են ունեցել նրանից հետո, երբ Հայաստանի կառավարիչն էր Մուհամմադ բեն-Օքբան:*

*2. Ակնարկում է հայերի 703 թ. ապստամբությունը:*

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ ԸՍՏ ԻԲՆ ԱԼ-ՖԱԿԻՀԻ

***Իբն ալ-Ֆակիհը հայտնի աշխարհագետ է: Ազգությամբ պարսիկ այս հեղինակը ծնվել է VIII դ. կեսերին Իրանի Համադան քաղաքում: Հեղինակ է «Գիրք երկրների մասին» (Քիտաբ ալ-Բուլդան) երկասիրության, որ գրել է շուրջ 903 թվականին: Գիրքն ունեցել է հինգ հատոր, սակայն մեզ է հասել այդ հինգհատորների հիման վրա կազմված սեղմ շարադրանքը, որն իրականացվել է 1022 թվականին: Փաստորեն բուն շարադրանք մեզ չի հասել:***

***Ստորև բերվող թարգմանությունն իրականացրել է Ա. Ն. Տեր-Ղևոնդյանը՝ կատարված հետևյալ հրատարակությունից «Bibliotheca Geographorum Arabicorum», Lugduni-Batavorum, 1885, որը զետեղված է «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. Արաբական աղբյուրները. Գ. Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր» գրքում (Երևան, 2005):***

*Հայաստանի սահմանն է Պարտավից մինչև Դարբանդ և մյուս կողմից մինչև Հոռոմոց (Ռում) երկիրը և մինչև Կովկաս լեռը, Սարիրի թագավորությունն ու Լազքի թագավորությունը: Ատրպատականի վերջին գավառից, որը Վարդանակերտն (Վարսան) է, մինչև Հայաստանի առաջին գավառը ձիերի 8 կայան (սիքքա) է, իսկ Պարտավից մինչև Տփղիս ձիերի 10 կայան է:*

*Առաջին Հայաստանում են Սիսականը, Առանը, Տփղիսը, և այն նվաճել է Հաբիբ իբն Մասլաման, Փայտակարանը, Կապաղակը, Շիրվանը:*

*Երկրորդ Հայաստանում են Վասպուրականը, Դվինը, Շիրակը, Տայքը, Բագրեանդը, Նախճավանը:*

*Երրորդ Հայաստանում են Վիրքը, Սուղդաբիլը, Պերոզ Կավատի Դուռը, Լաքզը:*

*Չորրորդ Հայաստանում են Շիմշաթը, Խլաթը, Կարնո քաղաքը, Արճեշը և Ապահունիքը:*

*Ահմադ իբն Վադիհ ալ-Իսբահանին հիշել է, որ ինքը երկար տարիներ ապրել է Հայաստան երկրում և քարտուղարություն է վարել նրա կառավարիչների մոտ և, որ Հայաստանից ավելի բարիքներով լի ու կենդանիներով հարուստ երկիր չի տեսել: Նա նշել է, որ Հայաստանի թագավորությունների [տիրույթների] թիվը հարյուր տասներեք է: Հայաստանում կա տասնութ հազար գյուղ:*

*Հիշվել է, որ Կալիկալան մի կին է, որ կառուցել է Կարնո քաղաքը (Կալիկալա) և նրա անունով էլ կոչվել է: Այս բառի իմաստն է Կալիի բարեգործությունը:*

*Ինչ վերաբերում է Տառեխի լճին[1], ապա միշտ էլ նրանում թույլատրված է եղել [ձկնորսությունը], մինչև որ Մուհամմադ իբն Մրվան իբն ալ-Հաքամը, դառնալով Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ, արգելեց ձկնորսությունը, ապա լիճն անցավ Մրվան իբն Մուհամմադին, իսկ նրանից էլ բռնագրավվեց:*

*Հայաստանի խոշորագույն կենդանիներն են՝ ոչխարները, կովերը, ցուլերը և չները, իսկ ձիերը փոքր են, փոքր են նաև ուղտերը, որոնց որովայնը համարյա բերանին է հասնում:*

*Հայաստանի զարմանալիքներից է Խլաթի լիճը[2], քանզի նրանում տասն ամիս ոչ մի գորտ, խեցգետին կամ ձուկ չի լինում, ապա երկու ամսով հայտնվում է ձուկը[3] և նա ամբողջովին թմրած է լինում:*

*Արաքսը մի զարմանալի [գետի] ձոր է, որտեղ կան ձկան տեսակներ: Նրանում լինում է չուրմահին[4] և միայն այս գետում է լինում: Հայտնվում է ամեն տարի՝ որոշակի ժամանակ, ինչպես ծովի կետերի*

*տեսակները և ձկների վտառները, որոնք որոշակի շրջաններում են երևան գալիս, ինչպես Թառափը:*

*Այս գետում (Արաքս) բազմաթիվ այլ ձկների շարքում հատկապես հայտնի է շուրմահին՝ հաճելի համի, առատ ճարպի և մսի հյութեղ լինելու շնորհիվ:*

*Հայաստանի բնակիչներն ասում են, որ մենք շատ մաննա (մանն) ունենք: Ունենք որդան կարմիրը (կիրմիզ), որի նմանը ոչ ոք չունի: Սա մի կարմիր որդ է, որը հայտնվում է գարնանային օրերին և նրան հավաքում են, եփում, ապա նրանով ներկում են բուրդը:*

*Իսկ աշակը մի կենդանի է (գրաստ), որ լինում է Հայաստանում և նման է կատվին (սիննաուր), ճկուն հոդերով, մազոտ մաշկով, որի [մաշկի] մի քանի կտորն իրար կարելով դառնում է հագուստ:*

*Հայերն ասում են, թե ունենք տորոն բույսը:*

*Նրանում [Հայաստանում] կա սնդիկի հանք, պղնձարջասպ, պղինձ և կապար:*

*Նրանք ունեն հայկական ցուլեր: Ունեն առատ շագանակենի (շահբալութ) և կեչի (խալանջ), որոնց [փայտանյութից] հրաշալիքներ են պատրաստում: Կեչին կտրում են Պարտավի կողմերում, անտառի թավուտից, որը ծառաշատ է և առատ բուսականությամբ:*

*Հայաստանի (Արմինիա) տարեկան հարկը երկու միլիոն երեսուներեք հազար ինը հարյուր ութսունհինգ (2.033.985) դիրհեմ է[5]:*

*1. Խոսքը Վանա լճի մասին է, որ արաբների մոտ հայտնի է Թիրիխ (Տառեխ) անունով: Օմայանները պետականացրել են լիճը և նրա ձկների հասույթը: Աբբասյանների օրոք տառեխ ձուկը մտնում էր Հայաստանի բնահարկի մեջ՝ տարեկան 200.000 ձուկ:*

*2. Վանա լճի անվանումներից մեկն է:*

*3. Նկատի ունի տառեխ ձուկը:*

*4. Հավանաբար նկատի ունի լոքո ձկնատեսակը:*

*5. Հարկի այս չափը վերաբերում է արաբների տիրապետության վերջին շրջանին (IX դ. կեսեր): Հայտնի է, որ Հարուն ալ Ռաշիդի իշխանության տարիներին (786-809) Արմինիա ոստիկանությունը վճարում էր 13 միլիոն դիրհեմ (արծաթ) տարեկան հարկ [տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. III (ՀԳԱ ակադեմիայի հրատ.), Երևան, 1976, էջ 374-375]:*

## ԱԲՈՒ ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ԱՍԻՄ ԱԼ-ՔՈՒՖԻԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

***Արաբ պատմիչ Քուֆիի մասին գրեթե ոչինչ հայտնի չէ: Հեղինակել է «Նվաճումների գիրք» բազմահատոր աշխատությունը, որն***

*ընդգրկում է համաշխարհային պատմության շուրջ 250-ամյա շրջան (632-866)։ Գրել է նաև «Պատմություն» աշխատությունը, որն օգտագործել է որպես «Նվաճումների գրքի» նախաբան։ Բացի պատմական աշխատություններից, հեղինակ է նաև ժամանակագրական աշխատությունների, որոնք չեն պահպանվել։*

*Քուֆին արևելագետներին քիչ հայտնի հեղինակ է, որի աշխատությունը պահպանվել է միայն մեկ օրինակով՝ Ստամբուլում։ Հայտնի է դարձել XX դ. 30-ական թթ., երբ առաջին անգամ հայտնաբերվեցին և հրատարակվեցին դրա՝ արաբա-խազարական պատերազմներին վերաբերող հատվածները։*

*Քուֆին արաբ այն հեղինակներից է, որոնց ստեղծագործությունները կարևորություն են ներկայացնում VII-VIII դդ. հայոց պատմության լուսաբանման համար։ Նրա աշխատության մեջ արժեքավոր բազմաթիվ տեղեկություններ կան Հայաստանի և հայերի մասին։ Սակայն, այն հաճախ դուրս է մնացել հետազոտողների ուշադրությունից։ Մինչև այժմ Քուֆիի աշխատությունը կամ դրա՝ Հայաստանին վերաբերող հատվածները հայերեն չեն թարգմանվել։*

*«Նվաճումների գրքի» արաբերեն բնագիրը հրատարակվել է Հայդարաբադում 1975 թվականին։*

*Ստորև բերվող հատվածները քաղված և թարգմանված են այդ հրատարակությունից (տե՛ս Àl-Kufi, Kitā b'l-futūh, I-VIII, Hyderabad, 1968-1975)։ Ընտրողաբար թարգմանվել են Հայաստանի վերաբերյալ Քուֆիի ամենակարևոր տեղեկությունները, որոնք այլ արաբ պատմիչներ կամ չեն պահպանել և կամ պահպանել են այլ տարբերակով։ Թարգմանությունն արաբերենից և ծանոթագրությունները Ա. Ս. Եղիազարյանի։*

## ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ԳԻՐՔ

### *Մաս II, էջ 111-116*

### *Սալման իբն Ռաբիայի[1] և Հաբիբ իբն Մասլամայի[2] արշավանքները Հայաստան և այսրկովկասյան երկրներ[3]*

*... Սալման իբն Ռաբիան Իրաքի բնակիչների հետ եկավ Արմինիա երկիրը։ Երբ Արմինիայի թագավորները տեղյակ դարձան իրենց երկրներ արաբների մուտքի մասին, նրանք թաքնվեցին բերդերում և լեռնային անտառներում։*

*... Սալման իբն Ռաբիան սկսեց ոչնչացնել բոլոր նրանց, ովքեր*

*թշնամացան նրա ու [նրա] զորքի դեմ և գրավել ճանապարհին հանդիպած նրանց քաղաքներն ու բերդերը և երկիրը թշնամիներից ազատելով՝ հասավ Բայլական, որն Առան երկրում է:*

*... Բայլականի բնակիչներն ընդառաջ դուրս եկան՝ խաղաղության խնդրանքով և հյուրընկալեցին նրա զորքին: Նրանց հետ [Սալման իբն Ռաբիան առաջարկեց] հաշտություն կնքել՝ ջիզիա վճարելու պայմանով: Նրանք ընդունեցին պայմանը:*

*Դրանից հետո նա Բայլականից գնաց և պաշարեց Բարդաայի ամրոցը: Նրանք նրա հետ հաշտություն կնքեցին՝ հարկ վճարելու պայմանով, որը նա ստացավ և բաժանեց իր զինվորներին: Դրանով նա ուժեղացրեց նրանց [զինվորների] կամքը:*

*Այնուհետև նա հեծելազորով շարժվեց դեպի Ջուրզան[4] երկիրը: Նրանց հետ նա հաշտություն կնքեց՝ տարեկան հարկ վճարելու պայմանով:*

*Դրանից հետո նա վերադարձավ և... անցավ Կուր գետն ու մոտեցավ Շիրվան երկրին:*

*... Խալիֆա Ուսման իբն Աֆֆանն[5] իմացավ դժբախտության[6] մասին և գրեց... Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆահրիին՝ հրամայելով ամբողջ զորքով անցնել Արմինիա երկիրը:*

*...Երբ հասավ Ուսմանի նամակը, Հաբիբ իբն Մասլաման հավաքեց իր զորքը՝ 6 հազար հեծյալ ու հետևակ: Դրանից հետո նրանց հետ նա գնաց Արմինիա երկիրը: ... Նա այնտեղ մտավ մի լեռնանցքով, որն այժմ կոչվում է Բանու Ջարարա[7]:*

*Նա... հասավ Խիլաթ կոչվող քաղաքին, կանգ առավ նրա բերդի մոտ, որտեղ հավաքվել էին անհավատները: Բերդի մոտ մնալով մի քանի օր, նա հեռացավ և ... հասավ Սիրաջ[8] կոչվող երկրին, որտեղ կանգ առավ: Այնտեղից նա նամակ ուղարկեց Ջուրզանի բնակիչներին: Նրանց իշխանները ստացան նամակը, և Մասլաման նրանց հետ հաշտություն կնքեց՝ 80 հազար դիրհեմ վճարելու պայմանով:*

*Նա մնաց Արմինիա երկրում և գրեց նրա թագավորներին՝ պահանջելով հնազանդվել և ընդունել իր պայմանները:*

*... Հաբիբ իբն Մասլաման տիրում էր այնտեղ այնքան ժամանակ, մինչև Ուսման իբն Աֆֆանը նրան ազատման հրաման չուղարկեց: Նրա փոխարեն նշանակեց Խուզայֆա ալ-Յամանիին:*

*... Խուզայֆան իր հորեղբոր ցեղից Սուլաաթ իբն Զաֆիր ալ-Աբսիին ուղարկեց Արմինիա երկիրը, որտեղ ինքն էր նշանակվել խալիֆայի կողմից... Սուլաաթ իբն Զաֆիր ալ-Աբսին մտավ Արմինիա երկիրը և մեկ տարի իշխեց այնտեղ: Նա հնազանդեցնում էր այնտեղի*

*իշխաններին, մինչև որ բոլորն էլ չենթարկվեցին և չհնազանդվեցին նրան:*

*... Հետո Ուսման իբն Աֆֆանը... հեռացրեց Խուզայֆային Արմինիա երկրում տնօրինությունից, կանչեց Մուղիր իբն Շուայբին և նշանակեց նրան Արմինիա և Ադարբիջան երկրներում: ... Հետո խալիֆան հեռացրեց նրան և տնօրինությունը տվեց Ալ-Աշաաս իբն Կայս ալ-Քինդիին: Նա այնտեղ մնաց մինչև Ուսման իբն Աֆֆանի մահը:*

*Ալ-Աշաաս իբն Կայսը խարաջ էր հավաքում Արմինիայից ու Ադարբիջանից և ուղարկում Ուսման իբն Աֆֆանին, թո՛ղ Աստված նրանից գոհ լինի»:*

### *Մաս VI, էջ 293-299*
### *Մուհամմադ իբն Մարվանի արշավանքը Հայաստան. Արմինիա վարչական շրջանի ստեղծումը և հայ իշխանների հրկիզումը*

*«... Աբդ ալ-Մալիք իբն Մարվանը*[9] *կանչեց իր եղբայր Մուհամմադ իբն Մարվանին*[10]*, նշանակեց Ջազիրայի, Ադարբիջանի ու Արմինիայի ամիրա և մեծ բանակ տվեց նրան:*

*... Այդ գործի գլխավորությամբ Մուհամմադ իբն Մարվանը դուրս եկավ Սիրիայից և նրա հետ էր Մասլամա իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարվանը, ու հասավ Ջազիրա երկիրը: Դրանից հետո նա կանչեց Ուբայդուլլահ իբն Աբու Շայխ ալ-Աուիին, նրան տվեց 10 հազար սիրիացի հեծյալ և հրամայեց մտնել Արմինիա երկիրը՝ պատերազմելու այնտեղ գտնվող խազարների և մյուս անհավատների դեմ:*

*...Ուբայդուլլահ իբն Աբու Շայխը զորքով մտավ Արմինիա երկիրը: Իմացավ երկրի ժողովուրդը և մուսուլմանների դեմ հանեց 100 հազարից ավելի մարդ: Նրանք կոտորեցին բոլոր մուսուլմաններին և տիրեցին նրանց ունեցածին ու զենքին: Նրանք հավաքեցին մուսուլմանների ամբողջ ունեցածը:*

*... Այդ իմացավ Մուհամմադ իբն Մարվանը... և արշավանքի դուրս եկավ 40 հազար զինվորներով:*

*Երբ զորքով հասավ Արմինիա երկրի մեջտեղը, նրա դեմ դուրս եկան շատ ռումներ*[11] *և հայեր: Մուհամմադ իբն Մարվանը կռվեց նրանց դեմ, սակայն, վախենալով, որ կպարտվի և կպատվազրկվի իր դեմ կռվող անհավատների մեծ բազմությունից: Բայց աստված անհավատներին փախուստի մատնեց և ամրապնդեց մուսուլմաններին: Մուսուլմանները նրանցից մեծ բազմություն կոտորեցին, գերիներ վերցրեցին՝ տիրելով նրանց երկրին և ունեցվածքին:*

*... Դրանից հետո Մուհամմադ իբն Մարվանը կանչեց նրանց*

*հայտնի ազնվականներին՝ խոստանալով խնայել, տալ՝ ինչ որ կամենում են և նրանց առաջնորդ նշանակել նրանց ցանկացած [անձ]ին: Նա երկար համոզում էր նրանց, մինչև որ նրանք վստահեցին նրան: Հետո նրանք հավաքվեցին նրա մոտ և նրանց հետ համաձայնեցրեց հաշտության պայմանները:*

*Հետո Մուհամմադ իբն Մարվանն ասաց նրանց. «Ես ձեզ չեմ հավատում: Մտեք ձեր եկեղեցիները և այնտեղ երդվեք ինձ, որ չեք խախտի հաշտությունը: Հետո տվեք ինձ գերիներ և գնացեք ձեր պալատները»:*

*... Նրանք համաձայնեցին և հետո մտան եկեղեցի[ներ], որպեսզի երդվեն: Երբ նա իմացավ, որ նրանք հավաքվել են եկեղեցիներում, հրամայեց փակել դռները: Եկեղեցիների դռները փակեցին, նավթ լցրեցին և հրկիզեցին: Այդ եկեղեցիները մինչև այժմ էլ կոչվում են հրկիզված:*

### *Մաս VIII, էջ 45-46*

### *Հիշամ խալիֆայի օրոք, Հյուսիսային Կովկասում զորավար Ջառահի պարտությունից[12] հետո Արմինիայի ոստիկան Սաիդ իբն Ամր ալ-Հարաշիի[13] արշավանքը Հայաստան և Խլաթի գրավումը*

*«... Դրանից հետո նա հասավ Բանու Զարարա կոչվող լեռնանցքին, անցավ այն և հասավ Խլաթ քաղաքին: Նրա բերդը լի էր անհավատներով: Նա կռվեց մի քանի օր և գրավեց, կոտորեց զինվորներին, իսկ ավարը բաժանեց իր զորքին: Հետո դուրս եկավ Խլաթից և սկսեց գրավել նրանց բոլոր բերդերը և ամրոցները, մինչև հասավ Բարդաա: Նա պաշարեց այն, որը ուրախացրեց Բարդաայում ապրող մուսուլմաններին»:*



*Հիշամ խալիֆայի դրամը*

### *Հիշամ խալիֆայի օրոք Մարվան իբն Մուհամմադի[14] արշավանքը Արմինիա[15], էջ 71*

*«... Մարվան իբն Մուհամմադը Սիրիայից դուրս եկավ 120 հազար զինվորներով և շուտով հասավ Արմինիա: Այնուհետև, նա [շարժվեց ու] կանգ առավ Քասաք անունով մի բնակավայրում, որը գտնվում էր*

*Բարդայից 40 և Տփղիսից 20 փարսախ հեռավորության վրա: Նա սկսեց ոչնչացնել Արմինիա երկրի իշխաններին ու բաթրիկներին, մինչև [նրանք] չհնազանդվեցին և չհպատակվեցին: Այնուհետև շարժվեց առաջ, գրավեց Արմինիայի բոլոր ամրոցները»:*

### *Արմինիայի ոստիկան Հասան իբն Կահթաբայի[16] արշավանքը Ջավախք և Ծանարք, էջ 145*

*«Երբ Հասան իբն Կահթաբան մտավ Առան երկիրը, [լուր հասավ], որ նրա դեմ ապստամբել են սանարները, որոնք անհավատներ են և բնակվում են Ջուրզան երկրում:*

*... Սանարները միացան Ջավախիթի ժողովրդի հետ, որոնք նույնպես անհավատներ են: Նրանց թիվը շատ մեծ էր, և նրանք հարձակվեցին մուսուլմանների վրա: Նրանք պատերազմեցին, և աստված հաղթանակ պարգևեց մուսուլմաններին: Մի ճակատամարտում անհավատներից 10 հազար մարդ սպանվեց:*

*Հասան իբն Կահթաբան մնաց Առանի Բարդայում: Նա կանչեց իր որդի Կահթաբային և նշանակեց Բաբ ալ-Աբվաբի[17] կառավարիչ, կանչեց մյուս որդուն՝ Իբրահիմին և նշանակեց Ջուրզան երկրի կառավարիչ՝ սկսյալ Տփղիսից և անդին, իսկ երրորդ որդուն՝ Մուհամմադին՝ նշանակեց Արմինիա երկրի կառավարիչ՝ սկսյալ Խիլաթից ու Կալիկալայից և անդին»:*

### *Սահլ Սմբատյանի կողմից Բաբեկին ձերբակալելը, էջ 256*

*«Երբ լուրը հասավ[18] ... Սահլ իբն Սումբաթ[19] անունով կառավարչին, նա իր մարդկանցով գնաց այնտեղ: Երբ տեսավ Բաբաքին, ճանաչեց և հասկացավ, որ նա ծպտված է: Նա սկսեց ծառայել նրան: Բաբաքին դուր եկավ նրա վերաբերմունքը, և Սահլ իբն Սումբաթը բերեց նրան իր ամրոցը: Հետո նրան հյուրասիրեց գինիով, և Բաբաքը կերավ ու խմեց: Երբ նա հարբեց, Սահլ իբն Սումբաթը հրամայեց նրան շղթայել՝ աջ ձեռքը կապելով վզից: Այնուհետև նա Բաբաքին հանձնեց իր մարդկանց և ուղարկեց Աֆշինին[20]:*

*Երբ Աֆշինը տեսավ Բաբաքին, շատ ուրախացավ: Հետո Սահլ իբն Սումբաթին 1 միլիոն դիրհեմ արժողությամբ նվերներ ուղարկեց:*

*...Երբ Մութասիմը[21] իմացավ, թե ինչ է արել Սահլ իբն Սումբաթը Բաբաքի հետ, նրան մարգարիտներով և գոհարներով զարդարված ոսկե թագ ուղարկեց: Թագի գինը 500 հազար դիրհեմ էր: Բացի այդ, նա Սահլ իբն Սումբաթին նշանակեց [Արմինիա երկրի] բոլոր բաթրիկների գլխավոր»[22]:*

*Սահլ Սմբատյանի կողմից Խուրամյան շարժման առաջնորդ Բաբեկին ձերբակալելը[23] , էջ 350-351*

*«Դա տեղի է ունեցել Սահլ իբն Սումբաթի լեռներում:... Սահլ իբն Սումբաթը և նրա մարդիկ ձի նստեցին և գնացին Բաբաքի մոտ: Իբն Սումբաթը համբուրեց նրա դիմացի հողը և ասաց. «Տե՛ր իմ, ո՞ւր ես գնում»: «Ռում»,- պատասխանեց նա: Սահլ իբն Սումբաթն ասաց. «... Մնա իմ ամրոցում այս ձմեռ, հետո կիմանանք՝ ինչ անել: Ես քո ծառան եմ»: Բաբաքը հավատաց Սահլ իբն Սումբաթին և մնաց նրա ամրոցում: Սահլ իբն Սումբաթը գրեց Աֆշինին, որ Բաբաքն ու նրա մարդիկ իր մոտ են, իսկ նրա եղբայր Աբդալլահը գտնվում է իբն Իսթիֆանուսի[24] ամրոցում: Աֆշինը պատասխանեց նրան. «Եթե դա ճիշտ է, դու կստանաս հավատացյալների ամիրայից՝ ինչ ցանկանաս»:*

*1. Արաբ զորավար, որը 655 թ. գրավել է Հայոց Արևելից կողմերը, Աղվանքը, Կասպից ծովի արևմտյան ափերը և Դարբանդը:*

*2. Արաբ զորավար, որը 654-655 թթ. գրավել է Հայաստանը և Վիրքը:*

*3. Արշավանքները տեղի են ունեցել 654-655 թվականներին:*

*4. Այսինքն՝ Վրաստան:*

*5. Իշխել է 644-656 թվականներին:*

*6. Սալման իբն Ռաբիայի մահվան և խազարների կողմից նրա զորքի կոտորվելու մասին:*

*7. Ջորա պահակ լեռնանցքը:*

*8. Այսինքն՝ Շիրակ:*

*9. Արաբական խալիֆա, իշխել է 685-705 թվականներին:*

*10. Մուհամմադ իբն Մարվանի արշավանքը Հայաստան տեղի է ունեցել 697-700 թվականներին:*

*11. Այսինքն՝ բյուզանդացիներ:*

*12. Ջառահի արշավանքը Հյուսիսային Կովկաս տեղի է ունեցել 729 թ., իսկ նահանջը և մահը՝ 730 թվականին:*

*13. Արմինիայի ոստիկան 730-731 թվականներին: Հայկական աղբյուրներում՝ Սեթ Հարաշի:*

*14. Արմինիայի և Ատրպատականի փոխարքա 732-744 թվականներին:*

*15. Մարվան իբն Մուհամմադը երկու արշավանք է կատարել դեպի Արմինիա, որտեղից անցել է Հյուսիսային Կովկաս: Դրանք տեղի են ունեցել 732/733 և 738/739 թվականներին: Այստեղ խոսքն առաջին արշավանքի մասին է:*

*16. Արմինիայի ոստիկան 754-759 թվականներին:*

*17. Այսինքն՝ Դարբանդի:*

*18. Բաբեկի փախուստի և Հայոց Արևելից կողմերում թաքնվելու մասին:*

*19. Խաչենի իշխան Սահլ Սմբատյան:*

*20. Արաբ զորավար, որը պատերազմել է Բաբեկի դեմ:*

*21. Արաբական խալիֆա, իշխել է 833-842 թվականներին:*

*22. Նման տեղեկություն պահպանվել է նաև Մովսես Դասխուրանցու մոտ: Այդ իրադարձությունը տեղի է ունեցել 837 թվականին:*

*23. Քուֆին ներկայացնում է այդ պատմության մեկ այլ տարբերակ:*

*24. Արաբական այլ աղբյուրներում՝ «Իսայի իբն Իսթիֆանուս»: Խոսքը, ամենայն հավանականությամբ, Դիզակի իշխան Եսայի Աբու Մուսեի մասին է, քանի որ արաբ այլ հեղինակներ, այս պատմությանն անդրադառնալիս, նշում են, որ Բաբեկի եղբայրը տեղափոխվել է Եսայի Աբու Մուսեի ամրոցը, այսինքն՝ Քթիշ բերդը:*

## II. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՐԱՎԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ

### ՂԵՎՈՆԴԸ ՀԵՐԹԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԻ ՄԱՍԻՆ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԺԷ.*** *Նրա[1] փոխարեն տիրեց Շամը, որը Հեշմն[2] է, 19 տարի:*

*Սա իր իշխանության առաջին տարում, վատ խորհուրդ հղանալով, Հերթ[3] անունով մի զորավար ուղարկեց աշխարհագիր անելու մեր Հայոց աշխարհում, որպեսզի տեսակ-տեսակ չարիքներով ծանրացնի հարկատվության լուծը, իբրև թե դժգոհ լինելով Օմարի բարեմտությունից, որն ապօրինի ծախսել էր այն գանձերը, որոնք մթերված էին նախորդ տիրակալների կողմից: Բազում վիշտ պատճառեց մեր երկրին, մինչև որ ամենքն սկսեցին հառաչել դառն նեղություններից, և չկար ոչ մի հնար անտանելի տագնապներից ազատվելու: Դրանից հետո առավել ևս ծանրացավ նրա ձեռքը մեր Հայոց աշխարհի վրա:*

*1. Նկատի ունի Եզիդ խալիֆային (720-724):*

*2. **Շամ, Հեշմ** – խոսքը վերաբերում է Հիշամ խալիֆային (724-743):*

*3. Սա Արմինիայի կառավարիչ Հարիս իբն Ամր ալ-Թաիនն է (724-725):*

### ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑԻՆ ՀԵՐԹԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԻ ՄԱՍԻՆ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՇԽԱՐՀԻ

### Գիրք Գ

***Գլ. ԺԶ.*** *Հայոց հարյուր յոթանասունչորս թվականի[1] ամառը տեղի է ունենում անասունների համաճարակ, իսկ ձմեռը կատարվում է Հերթի աշխարհագիրը, որը մարդ, անասուն, հող ծանր հարկերի տակ դրեց:*

*1. Այսինքն՝ 725 թվականի:*

## ՂԵՎՈՆԴՆ ԱՐԱԲՆԵՐԻ ՀԱՐԿԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԾԱՆՐ ՎԻՃԱԿԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

*Գլ. ԻԱ. Այդ ժամանակ Իսմայելի իշխան Հեշմը մեր հայոց ազգի վրա [կառավարիչ] նշանակեց Մահմետի որդի Մրվանին, Սեթի փոխարեն, որը Հարաչի էր կոչվում: Երբ Մրվանը Դվին հասավ, Հայաստանի նախարարները նրան ընդառաջ ելան: Զրուցեց նրանց հետ խաղաղասեր խոսքերով և իր մոտ կանչելով Վասակի որդի Աշոտին[1], Բագրատունյաց տնից, Հեշմի հրամանով տվեց նրան պատրիկության իշխանությունը մեր Հայոց աշխարհի վրա և բազում պատիվներով պատվեց նրան: Իսկ Սմբատի որդիներն, իմանալով Աշոտի ստացած պատվի մասին, թե ինչպես նրա անձը բարձրացել էր Հեշմի և Մրվան զորավարի աչքին, մեծ ատելությամբ լցվեցին նրա դեմ, մինչև որ նրանց գժտությունը հասավ Մահմետի որդու [Մրվանի] ականջին: Սա անմիջապես հրամայեց ձերբակալել նրանց և ուղարկեց Իսմայելի իշխանի մոտ: Գրիգորին ու Դավթին, որոնք Մամիկոնյան տոհմից էին, ամբաստանություն գրեց նրանց դեմ, թե խռովարար և անհնազանդ են Աշոտի իշխանության նկատմամբ: Նա հրամայեց նրանց տանել Եման կոչված երկիրը, որն անապատ է, և բանտի կալանքի մեջ պահել մինչև իրենց կյանքի վախճանը:*

*Երբ Աշոտի պատրիկության իշխանությունը հաստատվեց, գնաց Իսմայելի իշխանի մոտ մեր երկրի ծանր վիճակի պատճառով, քանզի երեք տարուց ի վեր չէր վճարվում Հայաստանի նախարարների և նրանց հեծյալների ռոճիկը: Ներկայացավ Հեշմին և խոսեց նրա հետ պատկառելի և իմաստուն ձևով: Սա մեծարեց նրան ըստ արժանվույն, կատարեց նրա խնդրանքը և հրաման տվեց նրա համար կշռել երեք տարվա [արծաթը] տարեկան 100.000 հաշվով: Դրանից հետո նրա իշխանության տարիներին անխափան գալիս էր սահմանված արծաթի սակը բոլոր հեծյալների համար:*

***Գլ. ԻԲ.** [Մրվանի] փոխարեն տիրեց Աբդլան[2], որն ուղարկեց եղբորը, մյուս Աբդլային[3], շրջելու իր իշխանության բոլոր երկրներում:*

*Սա նախ և առաջ եկավ Հայոց աշխարհը, բազում վշտերով ու նեղությամբ ամենքին տանջեց և չքավոր տնանկության հասցրեց, հարկ պահանջելով մինչև իսկ մեռյալներից: Որբերի ու այրիների բազմությունը չարալլուկ տառապեցնում էր խոշտանգումներով, այպանելի խարազանումներով և գանահարությամբ չարչարում էր քահանաներին ու աստվածային խորանի պաշտոնյաներին, որպեսզի հայտնեն վախճանյալների և նրանց ընտանիքների անունները: Խոշ-*

*տանգում էր և երկրի բնակիչներին բռնագույն և դառն հարկապահանջությամբ։ Ըստ գլխի[4] առնելով բազում արծաթ զուգե՝ ամենքի պարանոցին կապարե կնիք էր դնում։*

*Իսկ նախարարական տոհմերը կամա թե ակամա ընծաներ[5] էին տալիս՝ ձիեր, ջորիներ, պատվական հանդերձներ, ինչպես նաև ոսկու ու արծաթի գանձեր, որպեսզի կարողանային լցնել վիշապի բերանը, որը հարձակվում էր երկիրն ապականելու։ Լցնելով իր չարընկալ որովայնի անհագությունը, նա անցավ Պարսից և Մարաց կողմերը, մինչև Խորասան աշխարհը և այնտեղից՝ Եգիպտոս և Պենտապոլսական աշխարհը, մինչև Աֆրիկե։ Ամեն տեղ, ուր հասնում էր նա իր ագահ հափշտակող ցանկությունն իբրև ուռկան ձգելով՝ որսում էր մարդկանց կյանքի պարագաները, և մինչև անգամ իր ազգն անիրավության համար կոչեց նրան դանգի հայր։ Քանզի, ինչպես խոսքի կարգն է ասելու, դանգը (դրամը) ստուծուց ավելի էր մեծարում։ Երբ երկրից գնաց հեռացավ, Հայոց աշխարհի վրա դատավարության և հարկապահանջության հրամանատար թողեց Ուսադի որդի Եզիտին[6]։*

*Եզիտը մեր երկրի վրա իշխան նշանակեց Հայաստանի նախարարներից Բագարատի որդի Իսահակին[7], իշխան Աշոտի նույն տնից, որը նրա հորեղբորորդին էր։ Սա գեղեցիկ տղամարդ էր, բարձր հասակով, ազնվական բնությամբ և աստվածավախ։ Ուր էլ նրան ուղարկում էին, ակամայից էր առաջնորդում իր զորքը մարտի դժվարությունների պատճառով, քանզի այդ ժամանակվանից Հայաստանի զորքն այլևս չէր ստանում արծաթի սակը, որն ամեն տարի գալիս էր արքունիքից։ Հեծելազորի հաշիվը [նույնությամբ] իշխաններից էին պահանջում, և նրանք հարկադրված էին զորական գնդերն իրենց սեփական միջոցներով հանդերձել և պահել բոլոր զրավաստակ աշխատանքների ընթացքում։*

*Գլ. ԻԹ. ... Մյուս տարում[8] Եզիտն իր ձեռքի տակ եղած զորքը կազմակերպեց գնաց հասավ Կարնո քաղաքը, մարդահարկ դրեց երկրի վրա և անթիվ բազմություն հավաքելով՝ գործավարներ նշանակեց աշխատանքը հսկելու ու փութաջանորեն սկսեց շինել քաղաքի ճեղքվածք ունեցող պարիսպը։ Իսմայելի որդիներից բերեց այնտեղ բնակեցրեց իրենց ընտանիքներով՝ քաղաքը պահպանելու և թշնամուն հսկելու համար։ Նա կարգադրեց, որ Հայոց աշխարհը նրանց կերակրի, պարեն հայթայթվի։*

*Գլ. ԼԳ. Այս ժամանակներում Եզիտի կառավարչության և մյուս Աբդլայի իշխանության օրերում հույժ ծանրացավ հարկապահանջության լուծը մեր Հայոց աշխարհի վրա, քանզի դաժան թշնամու դժո-*

*խաձև ագահությունը չգոհացավ Քրիստոսի հոտի ընտրյալների մարմինն ուտելով և, անարգանքով ըմպելով արյունն իբրև ջուր, Հայոց համայն երկիրը դրեց անհանդուրժելի թշվառության մեջ: Երկրում վերջացավ արծաթի հանումը, և ամեն ոք, տալով ունեցած ամբողջ ինչքը, իր անձի փրկության գինը չէր գտնում, և չարաչար կտտանքով գելարաններով ու կախաղաններով ու դառն տանջանքով մարդկանց կեղեքում էին: Սրանից փախչելով՝ շատերը երկրի քարայրներում ու փապարներում փակվելով՝ թաքնվում էին: Ոմանք ձյունահեղձ և գետավեժ էին լինում անտանելի աղետների պատճառով, քանզի չէին գտնում այն, որ պահանջվում էր: Պահանջում էին հարկը վճարել արծաթով, այն էլ ըստ ամեն մի գլխի, որի հետևանքով զրկվում էին ամենայն ունեցվածքից: Հայոց երկիրը տնանկության կապանքներով էին կապում, և բոլոր նախարարներն ու մեծամեծները [հավասարապես] ճաշակում էին աղքատության հնոցից:*

*Թեպետև բազում անգամ բողոքել էին Սահակ իշխանը և հայրապետ տեր Տրդատը[9], որը Վանանդ գավառի նախարարական տնից էր, սակայն Եզիտը, որը մեր աշխարհի հարկի վերակացուն էր, չլսեց նրանց աղաղակը: Տրտունջի բողոք բարձրանալով՝ հասավ Աբդլլային, և սա խրոխտալով իր մոտ կանչեց Եզիտին ու նրա փոխարեն առաքեց Մսլիմի որդի Բագարին: Ոչ շատ ժամանակ հետո, դեռ Բագարի մեկ տարին չլրացած, [Աբդլլան] նրան իր մոտ կանչեց առանց որևէ պատճառի և առաքեց Հասանին, քանզի նենգամիտ խորամանկությունը նրան դրդում էր Հայոց երկիրը չարչարանքի վայրի վերածելու: Մանավանդ ոչ թե նրա, այլ իշխանների Ուղղիչ [Աստուծո] կամքն էր կատարվում, որի վկայությունն էր ի վերուստ եկած բարկությունը՝ մարախների բազմությունը, կարկուտներն ու անձրևների (պակասից առաջացած) երաշտը: Սրանք բարկության նշաններն էին մեր վրա:*

*Եկավ հասավ Հասանը՝ Կահթաբայի որդին, որպես կառավարիչ մեր Հայոց երկրի վրա, և նրա հետ բազում գնդեր Խորասան աշխարհից, որոնք առավել դառնությամբ հաճախ զազրագործություն էին կատարում և բազմացնում մեր երկրի աղետներն ու հեծությունը, քանզի, ինչպես նախապես պատմեցինք, տերը կարծրացրել էր նրանց սրտերը՝ մեր չար գործերից վրեժխնդիր լինելու համար, և արդարև սով, սուր և խռովություններ եղան նրա ազգապետության ժամանակ: Այս բոլորից բացի նրանք ավելացրին հայրապետներին արհամարհելը, եպիսկոպոսներին այպանելը, քահանաներին գանահարելն ու խոշտանգելը, իշխաններին ու նախարարներին չարչարելն ու քայքայելը, որոնց չկարողանալով հանդուրժել, մեր աշխարհի զորա-*

*գլուխները հեծում էին և հառաչում անհանդուրժելի տագնապից: Նրանք ռամիկների բազմությունը խոշտանգում էին տեսակ-տեսակ չարիքներով, ոմանց փոխհարությամբ տանջում էին դառն հարկապահանջության պատճառով, ոմանց գելարաններով ու կախաղաններով, իսկ ոմանց էլ դառնաշունչ ձմեռվա օրերին զգեստներից մերկացնելով՝ նետում էին լճերի մեջ ու պահապաններ կարգում, որպեսզի չարչարեն նրանց և այնպես չարալլուկ կոտանքներով էին կեղեքում, որ պատմել չեմ կարող այդ աղետների պատմությունը:*

*1. Խոսքը Հայոց իշխան (733-748) Աշոտ Բագրատունու (Աշոտ Կույր) մասին է:*

*2. Աբդլան Աբասյանների հարստության հիմնադիր աս-Սաֆֆահն է (750-754):*

*3. Խոսքը Աբու Ջաֆար ալ-Մանսուր խալիֆայի (754-775) մասին է:*

*4. Նկատի ունի գլխահարկը:*

*5. Հայ նախարարները բացի պաշտոնապես սահմանված հարկերից, պարտավոր էին լրացուցիչ թանկարժեք իրեր տալ որպես ընծա:*

*6. Սա Արմինիայի ոստիկան Եզիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին է (752-754):*

*7. Նկատի ունի Հայոց իշխան (753-770) Սահակ Բագրատունուն:*

*8. Այսինքն՝ 753 թվականին:*

*9. Խոսքը Հայոց կաթողիկոս Տրդատ Ա Ոթմսեցու (741-764) մասին է:*

## ԱԲՈՒ ՅՈՒՍՈՒՖՆ ԱՐԱԲՆԵՐԻ ՀԱՐԿԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Յակուբ իբն Իբրահիմ ալ-Անսարի ալ-Քուֆի Աբու Յուսուֆն արաբական կրոնա-իրավագիտական դպրոցի հիմնադիրներից է: Ծնվել է 731 թվականին, ուսանել է Քուֆայում և Մադինայում: Եղել է Բաղդադի գլխավոր դատավոր, խալիֆա Հարուն ալ-Ռաշիդի կողմից արժանացել է դատավորաց դատավոր պատվավոր տիտղոսին: Նույն խալիֆայի պատվերով գրել է «Հարկերի մատյան» (Քիտաբ ալ-Խարաջ) գիրքը: Սույն երկասիրությունն առաջնային սկզբնաղբյուր է խալիֆաթի երկրների (այդ թվում և Հայաստանի) դատական իրավունքի, ֆինանսական քաղաքականության, կառավարման ոլորտի ուսումնասիրության համար: Մահացել է 798 թվականին Բաղդադում:***

***«Քիտաբ ալ-Խարաջ»-ի առանձին հատվածների հայերեն թարգմանությունը, որ կատարել է Ա. Ն. Տեր-Ղևոնդյանը (տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». Արաբական աղբյուրներ. Գ. Արաբ մատենագիրներ. Թ-Ժ դարեր, Երևան, 2005), իրականացվել է հետևյալ հրատարակությունից. Abu Yusuf, Kitab al-Kharaj, Cairo, 1302/1885.***

## ՀԱՐԿԵՐԻ ՄԱՏՅԱՆ
## (Քիտաբ ալ-Խարաջ)

### *ԳԼԽԱՀԱՐԿ (ՋԻԶԻԱ) ՎՃԱՐԵԼՈՒ ՊԱՐՏԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ՄԱՍԻՆ, էջ 100–102*

*Գլխահարկը պարտադիր է բոլոր զիմմիների (ոչ մահմեդականների) համար, լինեն հրեաներ (յահուդ), քրիստոնյաներ (նասարա), զրադաշտականներ (մաջուս) և այլն, որոնք ապրում են [խալիֆաթի] այլևայլ վայրերում:*

*Գլխահարկը պարտադիր է տղամարդկանց, բայց ոչ կանանց և երեխաներին: Հարուստներից (բարեկեցիկ) վերցվում է քառասունութ դիրհեմ[1], միջակներից քսանչորս դիրհեմ, իսկ կարիքավոր, ձեռքով աշխատող հողագործից՝ տասներկու դիրհեմ: Դա գանձվում է նրանցից ամեն տարի: Եթե դրամի փոխարեն բերեն, գրաստ, ապրանքներ (իրեր) և այլ բաներ, դրանք կընդունվեն ըստ արժեքի:*

*Գլխահարկ չի վերցվում աղքատից, որին ողորմություն են տալիս, ոչ էլ կույրից, որը չունի ապրուստի միջոց կամ գործ, ոչ էլ ողորմություն ստացող զիմմիից կամ հաշմանդամից: Վանականները, որոնք ապրում են վանքերում (դիարատ), եթե եկամուտ ունեն, ապա նրանցից պետք է գլխահարկ վերցվի, իսկ եթե իրոք չքավոր են և բարեկեցիկ մարդիկ նրանց ողորմություն են տալիս, գլխահարկ չի վերցվի: Նույնը վերաբերում է մենաստանների ճգնավորներին (ահլ ալ-սավամի):*

*Մահմեդականներից գլխահարկ (ջիզիա ռաս) չի վերցվում:*

*Գլխահարկ չի վերցվում նաև զառամյալ ծերունուց, որն աշխատելու ի վիճակի չէ և ոչինչ չունի, ինչպես նաև տկարամիտ մարդուց:*

***Ի** դեպ, անհրաժեշտ է կնիք դնել զիմմիների վզին, գլխահարկը հավաքելու ժամանակ, մինչև ավարտվի նրանց ստուգումը: Ապա այդ կնիքները ջարդում են, եթե նրանք խնդրեն ջարդեն:*



***Ալ-Մամուն խալիֆայի դրամը կտրված Դվինում (817 թ.)***

*Պետք է հրամայել որ զիմմիներից ոչ ոք չնմանվի մահմեդականներին իր հագուստով, գրաստով և իր արտաքինով: Նրանց պետք է պարտավորեցնել, որ զուննար կոչված գոտին կապեն, որը նման է կոպիտ պարանի և որով ամեն մեկը պետք է գոտևորվի:*

*Նրանց կոնաձև գլխարկները (կալանսուա) պետք է մարակված լինեն, նրանց թամբերին պետք է կեղի ու մեջքի միջև նոաև նման փայտե գունդ կախեն, իրենց մույկերին (ոտնաման) կրկնակի փոկեր կապեն և ոչ թե այն ձևել մահմեդականների նման, նրանց կանանց պետք է արգելված լինի ուղտ հեծած գնալ:*

*Նրանք [քրիստոնյաները] իրավունք չունեն նոր տաճարներ կամ եկեղեցիներ կառուցել, բայց նրանցից, որ պահել են ըստ պայմանագրի, երբ դարձել են զիմմի և այսպիսով տաճարն ու եկեղեցին նրանց է պատկանել: Նման պայմաններում ինչ որ կա, թողնվում է նրանց և չի քանդվի:*

*Պետք է ստիպել զիմմիներին այնպիսի տարազ կրել, որպեսզի ըստ տարազի հնարավոր լինի նրանց տարբերել մահմեդականներից: Ոչ քրիստոնյան, ոչ էլ հրեան չպետք է ձիու թամբին հեծած ման գան, այլ ավանակ նստեն, նրանց կանայք թող ուղտ չհեծնեն, սակայն կարող են ավանակ հեծնել: Ամենախիստ հրամանը տուր և քո անունից արգելք հրապարակիր, որ քրիստոնյան չկրի ոչ պարեգոտ (կաբա), ոչ թանկ կերպասից (խազզ) զգեստ, ոչ էլ փաթթոց:*

*Զիմմիներին ջիզիա նշանակիր ըստ նրանց կարողության և այն բաժանիր մահմեդականների միջև: Իսկ զիմմիները պետք է հողը մշակեն, քանզի նրանք քաջ ծանոթ են դրան և շատ լավ են մշակում: Ոչ դու, ոչ քեզ մոտ եղած մահմեդականները չեք կարող որպես ծառա բաժանել զիմմիներին. չէ՞ որ նրանց հետ հաշտության պայմանագիր ես կնքել և ջիզիա ես վերցրել, ըստ նրանց կարողության: Քանի որ դու նրանցից վերցրել ես ջիզիան, դու այլևս ոչինչ չպետք է առնես նրանցից: Արդյո՞ք դու մտածել ես, որ եթե մենք բռնենք որևէ երկրի բնակչությանը և [որպես ծառա] բաժանենք, ապա մեզանից հետո եկող մահմեդականներին ինչ կմնա: Երդվում եմ Ալլահով, որ նրանք այլևս մարդ չեն գտնի, որ աշխատացնեն նրան և ոչ մի հնարավորություն չեն ունենա նրա աշխատանքի արդյունքից: Մահմեդականները նրանց հաշվին են ապրում քանի դեռ վերջինները ողջ են, իսկ երբ մեռնենք ու նրանք էլ մեռնեն, ապա մեր որդիները պետք է ապրեն նրանց որդիների հաշվին հավիտյան, քանի դեռ գոյություն ունեն, քանզի նրանք մնալու են իսլամի հետևորդների ծառաները (ստրուկ), քանի դեռ մահմեդական կրոնը տիրապետում է:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱՀԱՐԿԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ (VIII ԴԱՐԻ ԿԵՍ) ԸՍՏ ՋԱՀՇԻԱՐԻ

***X դարի արաբ մատենագիր Ջահշիարին (մահացել է 942 թվականին) հեղինակ է պատմագիտական մի երկասիրության, որտեղ մանրամասն անդրադառնալով Աբբասյանների հարկային քաղաքականությանը՝ մեջ է բերում մի հարկացուցակ: Այստեղ տրված է ենթակա երկրների ոչ միայն դրամական հարկերի չափը, այլև բնահարկն իր տեսակներով ու քանակով: Ըստ Ջահշիարիի, հարկացուցակը կազմված է եղել Հարուն ալ-Ռաշիդ խալիֆայի գահակալության շրջանում (785-809): Զպետք է կասկածել Ջահշիարիի իրազեկությանը, քանզի նա զբաղեցրել է պետական բարձրագույն պաշտոններ, եղել Ալի իբն Իսա վեզիրի սենեկապետը և հնարավորություն ունեցել անձամբ ծանոթանալու դիվանական վավերագրերին:***

***Ջահշիարիի աշխատության մեզ հետաքրքրող հատվածի թարգմանությունը կատարել է Ա. Ն. Տեր-Ղևոնդյանը (տե՛ս Ա. Ն. Տեր-Ղևոնդյան, Հայաստանի բնահարկ արաբական ժամանակաշրջանում, «Լրաբեր», ՀԳԱ ակադեմիայի հասարակ. գիտ., 1969, № 2, էջ 52-60):***

### ԱԲԲԱՍՅԱՆՆԵՐԻ ՀԱՐԿԱՅԻՆ ՑՈՒՑԱԿԸ[1]

### *ԱՐՄԻՆԻԱ*

*Տասներեք միլիոն դիրհեմ[2],*
*Մահփուրա գորգեր – քսան հատ,*
*Գունազարդ գործվածքեղեն – հինգ հարյուր ութսուն կտոր,*
*Աղած-մշակած ձուկ – տաս հազար ռաթլ (լիտր),*
*Տառեխ – տաս հազար ռաթլ (լիտր),*
*Բազեներ – երեսուն հատ,*
*Ջորիներ – երկու հարյուր հատ[3]:*

*1. Սույն հարկացուցակը ծանոթ է եղել արաբ պատմագիր Իբն-Խալդունին (1332-1406), որն այն մեջ է բերել իր աշխատություններից մեկում: Ըստ Իբն Խալդունի, Արմինիա ոստիկանությունը տարեկան վճարում էր՝ «Տասներեք միլիոն դիրհեմ (երկու նվազով), Մահփուրա գորգեր՝ քսան (հատ), գունազարդ գործվածքեղեն՝ հինգ հարյուր ութսուն ռաթլ (լիտր), աղած սուրմահի (ձուկ)՝ տասը հազար ռաթլ (լիտր), տառեխ՝ տասը հազար ռաթլ (լիտր), ջորիներ՝ երկու հարյուր, բազեներ՝ երեսուն» (տե՛ս **Ա. Տեր-Ղևոնդյան**, նշվ. աշխ., էջ 60):*

*2. Տասներեք միլիոն դիրհեմը գագաթնակետն է Արմինիայից գանձվող դրամական հարկի: Հայտնի է, որ արաբական տիրապետության թե՛ նախորդ (VIII դարի առաջին կես), թե՛ հաջորդ (IX դարի առաջին կես) շրջաններում Արմինիան*

*վճարել է շատ ավելի քիչ հարկեր: Օրինակ՝ Իբն Խորդադբեհի տվյալներով IX դարի առաջին կեսում Արմինիան վճարում էր չորս միլիոն դիրհեմ: Դրամական հարկի այս հսկայական գումարի կեսից ավելին բնականաբար, բուն Հայաստանն էր վճարում:*

*3. Ինչպես ակներև է, ամբողջ հարկագումարի մեջ դրամական մասն ավելի մեծ տեղ է գրավել, իսկ բնահարկը երկրորդական նշանակություն է ունեցել: Անգամ որոշ երկների անվան դիմաց հարկացուցակում բնահարկ բոլորովին չի նշանակված:*

## ՍԱՄՈՒԵԼ ԱՆԵՑԻՆ ԱՐԱԲՆԵՐԻ ՀԱՐԿԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Սամուել Անեցին ծնվել է Անի քաղաքում XII դարի 20-ական թվականներին և մահացել նույն դարի վերջերին: Կրթությունը ստացել է Հովհաննես Իմաստասերի Անիում հիմնած բարձրագույն դպրոցում: Նրա երկասիրությունը կոչվում է «Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», այսինքն՝ քաղվածքներ պատմագիրների աշխատություններից:***

***Սամուել Անեցու ժամանակագրությունն սկսվում է նախաքրիստոնեական շրջանից և հասնում մինչև իր օրերը: Օգտվել է Մովսես Խորենացուց և այլ մատենագիրներից: Պատմական իրադարձությունները շարադրել է ըստ ժամանակագրական հաջորդականության՝ դեպքերի նկարագրությունները տալով թվականներին համապատասխան: Անեցու ժամանակագրությունը շարունակել են ուրիշները՝ հասցնելով մինչև XVII դար: Հրատարակել է Ա. Տեր-Միքելյանը Վաղարշապատում՝ 1893 թվականին: Ստորև բերված հատվածներն աշխարհաբար է թարգմանել Ա. Գ. Աբրահամյանը:***

### ՀԱՎԱՔՄՈՒՆՔ Ի ԳՐՈՑ ՊԱՏՄԱԳՐԱՑ, էջ 82

*Եվ արաբական զորավարն անխախտ երդումով մուրհակ տվեց Հայոց աշխարհին, որ համարձակ կարող են պաշտել քրիստոնեությունը, թույլ տվեց մնալ իրենց հավատքում: Ամեն մի տնից նա վերցնում էր չորս դրամ, երեք մոթ խորբալ (այսինքն՝ մաղած ցորեն – Ա. Ա.), մեկ ձիու տոպրակ, մեկ մազից պարան և մեկ ձեռնոց: Իսկ քահանաներից, ազատներից և հեծյալ զինվորներից հրամայեց հարկ չվերցնել:*

## III. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐՆ ԸՆԴԴԵՄ ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ

### (VIII–IX դարեր)

### ՂԵՎՈՆԴ ՊԱՏՄԱԳԻՐԸ 703 Թ. ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ԵԼՈՒՅԹՆԵՐԻ ՄԱՍԻՆ

#### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Ը.*** *Երբ Մահմեդ զորավարը Ասորիք գնաց, Հայոց աշխարհի վրա իր փոխարեն իշխան թողեց իսմայելացիներից մեկին:*

*Սա վատ խորհուրդ հղացավ՝ Հայոց աշխարհից նախարարական ազատախումբ տոհմերը, իրենց հեծյալներով հանդերձ, մեջտեղից վերացնել: Նրա նենգ խորհուրդն անմիջապես հայտնի դարձավ Սմբատին, որը Բագրատունի տոհմից էր, և այլ նախարարների ու նրանց հեծյալներին: Երբ նա իմացավ դավադրությունը, իր մոտ կանչեց ազատանի դասից տոհմակիցներին՝ Աշոտ իշխանի որդի Սմբատին, Թեոդորոս իշխանի որդի Վարդին, իր եղբոր՝ Աշոտին, և այլ նախարարների: Խորհում էր հնար գտնել, որով կարելի կդառնար իրենց անձերը փրկել: Վերջապես խորհրդաժողովը որոշեց հեռանալ երկրից և գնալ հունաց թագավորի մոտ:*

*Ապա Վասպուրական երկրի նախարարներից ոմանք բաժանվելով՝ գնացին Վասպուրականի կողմերը, այն դաշտավայր մարզը, որն Առեստակողմ է կոչվում: Այնտեղ բնակվում էր ոմն միայնակյաց, որի մոտ գնացին գործի որպիսության մասին հարցնելու, քանզի սուրբ այր էր, ընտրյալ և լի հոգևոր իմաստությամբ: Սակայն նա ողբալով ու ավաղելով մեր երկրի կորուստը, եկեղեցիների կործանումը և նախարարական տոհմերի վերանալը, ոչինչ չկարողացավ հանձնարարել, այլ միայն [խորհուրդ տվեց] խոհեմ լինել և զգուշանալ նենգությունից: Ապա նրանց վրա աղոթք կարդալով՝ հանձնեց Տիրոջ շնորհներին և բաց թողեց նրանց:*

*Նրանք, ընթանալով Երասխ գետի եզերքով, անցան Ուղայեի սահմանն ու հասան Ակոռի մեծ ավանը: Իսկ Իսմայելի զորքերը, որոնք Նախճավան քաղաքում էին, ընկան նրանց ետևից և հետապնդելուց չդադարեցին, քանզի հինգ հազարից ավելի էին և կամենում էին կենդանի կլանել նրանց:*

*Երբ հայոց զորքերը տեղեկացան ավարառու թշնամու մասին, որը շարժվում էր նրանց դեմ, վեր կացան, անցան Երասխ գետը, բանակ դրեցին Վարդանակերտ ավանում, իսկ տաճկաց զորքերը հետապնդում էին նրանց: Հայոց զորքերը պատգամ հղեցին տաճկաց զոր-*

*քերին՝ ասելով. «Ինչո՞ւ եք մեզ հետապնդում, ինչո՞վ ենք մեղավոր ձեր առջև: Ահավասիկ մեր երկիրը ձեր առջև է, ձեզ ենք թողել մեր բնակավայրերը, մեր այգիները, անտառներն ու անդաստանները: Արդ, ինչո՞ւ եք նաև մեր անձերը պահանջում: Թույլ տվեք մեզ հեռանալ մեր սահմաններից»:*

*Սակայն Իսմայելի զորքերը չկամեցան լսել նրանց, քանզի Տերը կարծրացրել էր նրանց սրտերը, որպեսզի սրի բերան ընկնեն: Իսկ Հայոց զորքերը, ամրացնելով ավանի փողոցները, պահապաններ կարգեցին մինչև առավոտը լուսանալը և իրենք ամբողջ գիշերը աղոթքի հսկումի մեջ էին, հայցելով ամենայնի Տիրոջից նրա մեծազոր աջի օգնականությունը և արդար դատել իրենց և թշնամիների միջև: Արևածագին, երբ առավոտյան ժամերգությունը վերջացավ, իսկույն հոգևոր պատարագ մատուցեցին, և արժանավորները հաղորդվեցին Տիրոջ մարմնով ու արյամբ, այն համարելով իրենց անձերի նկատմամբ վերջին անհրաժեշտ հոգսը: Ապա թեթև կերակրելով իրենց մարմինները զորացրին և անմիջապես վեր կենալով՝ հարդարեցին գունդ առ գունդ և ճակատ առ ճակատ, ու պատերազմն սկսվեց: Այնտեղ մեծազոր Աստվածն օգնության հասավ Հայոց գնդին, և թեպետ երկու հազարից նվազ էին, սակայն չատերին հարվածելով՝ սրի քաշեցին: Ցրտաշունչ սառնամանիքի օրեր էին, և դառնաշունչ օդն առավել ևս սաստկանալով՝ զրկեց Իսմայելի զորքին իր արի զորությունից, քանզի ամբողջ գիշերը ձյան վրա էին օթագայել (անցկացրել), իսկ լուսածագին ընկան սրի բերանը: Ովքեր սրից ազատվեցին՝ ընկան Երասխ գետը, որն օդի խստությունից սառել էր, և երբ զորքի բազմությունը ելավ սառույցի վրա, սառույցն անմիջապես ջարդվեց, խոբասույզ խեղդվեցին բոլոր սրից փախածները և հեղձամահ եղան:*

*Մի փոքր մասը՝ մոտավորապես 300 մարդ, փախուստի դիմելով՝ ապավինեց տիկին Շուշանին: Սրանց իր զորքով հետապնդեց Աշոտի որդի Սմբատը, կամենալով փախստականներին սրի անցկացնել: Նրան ընդառաջ ելավ տիկին Շուշանը և բազում աղերսանքով ու խնդրանքով փրկեց նրանց՝ մերկ, բոկոտն, հետիոտն և վիրավոր վիճակում, որոնց, վերցնելով [իր մոտ], վերքերը կապեց, առողջացրեց և հանդերձներ հագցրեց: Տվեց նաև գրաստ իր երամակից և առաքեց Իսմայելի իշխան Աբդլ-Մելիքի մոտ, որի համար նրանից մեծ շնորհակալության և մեծամեծ պատիվների արժանացավ:*

*Իսկ Հայոց զորքերը՝ լիացած թշնամու ավարով, իրենց հաղթության ավետիսն առաքեցին հունաց թագավորին: Ավարից նրան ընծա ուղարկեցին արաբական ձիեր՝ ընտիր երիվարներ և ընկած դիակ-*

*ների քթերը կտրելով նրան հղեցին ընծայի հետ: Կայսրը, այս նվերն ստանալով մեծապես գոհություն մատուցեց Արարչին, ինչպես նաև շնորհակալություն հայտնեց Սմբատին և նրա հետ եղած նախարարներին ու նրանց զորքերին: Ըստ թագավորական օրենքի՝ հրամայեց նրան կուրապաղատության պատիվ տալ: Իսկ նա, կայսրից պատիվ ստանալով, առավ իր զորքը և գնաց Տայոց աշխարհը, մտավ Թուխարք կոչված ամրոցը և զգուշանում էր Իսմայելի որդիներից:*

*Այդ ժամանակ դարձյալ ավարառու թշնամին մի այլ հարձակում գործեց Վասպուրական նահանգի կողմերում գտնվող [հայոց] զորքի դեմ. և գալով իրար հանդիպեցին Ռշտունյաց գավառի Գուկանք կոչված գյուղում: Այստեղ նրանք իրար բախվեցին: Երբ տեսան, որ նրանք (հայերը) սակավաթիվ են, սաստկապես հարձակվեցին նրանց վրա, սակայն ողորմածն Աստված այս անգամ ևս գթալով՝ անմիջապես նրանց թիկունք դարձավ, օգնության հասավ: [Հայերը] ամենքին սրի քաշեցին: Բայց միայն երկու հարյուր ութսուն մարդ փախուստի դիմելով՝ ընկավ եկեղեցի: Եվ որովհետև [հայերը] չկարողացան որևէ այլ միջոց գտնել, խորհեցին սրբարանը հրկիզել, սակայն Վասպուրականի իշխան Սմբատը, Աշոտ իշխանի որդին, չթողեց այդ բանն անել, թույլ չտվեց այդ ապիրատությունը գործել: Նա ասում էր «Քավ լիցի, որ ձեռք տանք Տիրոջ փառքի բնակարանին, որը նման հաղթություն պարգևեց մեզ»: Եվ պահապաններ կարգեցին նրան հսկելու մինչև որ ինքը՝ սրբարանը, նրանց ստիպի իրենից դուրս գալ: Քիչ անց Իսմայելի զորականներից մեկը, որ նրանց գլխավորն էր, հաշտություն խնդրեց իր անձի համար, որպեսզի չսպանվի: Դիմեց հայոց զորքին՝ ասելով. «Լսել ենք, որ քրիստոնյաների ազգը ողորմած է, երբ մեկին տեսնում է վշտի մեջ, գթում է և ողորմում: Արդ, ողորմեցեք մեզ և մեր անձերը մեզ պարգևեցեք, իսկ մեր ինչքը ավարի մատնեք»: Պատասխան տվեց Սմբատ զորավարը և ասաց. «Մենք սովորել ենք Տիրոջից, թե ողորմությունը ողորմածներին է արժանի ցույց տալ, իսկ դուք անողորմ ազգ եք ու արժանի չեք ողորմածության, և ոչ էլ մենք այդ բանը կանենք»: Երբ իսմայելացին այս խոսքը լսեց, ասաց. «Արդ, գոնե իմ անձը խնայեցեք և մի սպանեք, իսկ մնացածներին ձեր ձեռքը կհանձնեմ»: Նրանք հանձն առան չսպասել նրան, իսկ նա ներս մտավ և ասաց՝ «օգուտ չկա մեր այստեղ մնալուց, քանզի տեսնում եմ, որ անողորմ են մեր նկատմամբ: Արդ, դուրս ելնենք նրանց մոտ: Եթե սպանեն մեզ, կմեռնենք, քանզի մեր օրենսդիր Մահմետը մեզ դրախտն է խոստացել, իսկ եթե խնայեն՝ կապրենք»:*

*Այս խոսքերից քաջալերվելով՝ նրանք ամենքը դուրս ելան և ան-*

*միջապես սրի բերան ընկան: Իսկ այն մարդուն, որին խոստացել էին չսպանել, կենդանի ուղարկեցին ծովի խորքը, իսկ իրենք՝ առնելով սպանվածներից հավաքված ավարն, իրենց միջև բաժանեցին և տարբեր տեղեր սփռվեցին:*

## 748–750 ԹԹ. ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՆ ԸՍՏ ՂԵՎՈՆԴԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԻԶ.*** *Այն ժամանակ, երբ տակավին երկարում էր պատերազմը նրանց (արաբների) միջև, մեր երկրի բոլոր նախարարները խորհեցին դեն նետել հնազանդության լուծը, ապստամբել և ազատվել Իսմայելի հպատակությունից: Այս խորհուրդը տվել էր Գրիգորը՝ Մամիկոնյան տոհմից, և այս խորամանկությունը նյութել էր Աշոտի իշխանությունը խլելու նպատակով: Իսկ Հայաստանի բոլոր նախարարները, գալով Աշոտ իշխանի մոտ, համոզում էին նրան կողմնակից դառնալ և միաբանել անօգուտ խորհրդին:*

*Իշխանը, տեսնելով նախարարների և նրանց հեծյալների միաբանությունը, և որ նրանք բոլորը ոգևորված էին անօգուտ խորհրդով՝ իր մեջ վարանեց և նախարարներին մեկ-մեկ կանչելով՝ բազում խոսքերով թախանձում էր չձեռնարկել այս ապիրատ գործը: Նա ասում էր. «Ով եղբայրներ, խոհական միտք չեմ տեսնում այս անխոհեմ գործի մեջ, այլ միայն՝ անուղղելի խորհուրդ և անպիտան խոսքեր: Մեր զորքերը սակավաթիվ են Իսմայելի բռնության դեմ, չենք կարող դիմադրել նրանց զորքերին և ոչ էլ մեր երկիրը փրկել վիշապի բերանից, այլ միայն տանջանքի ու վտանգի կենթարկենք նրան: Բայց եթե կամենում եք իմ խրատն ընդունել, այս բանը մի անեք և հարկ վճարենք նրանց, ինչպես ցարդ անում էինք, և պահպանենք մեր ստացվածքները, այգիները, անտառներն ու անդաստանները»: Սակայն Հայաստանի նախարարները չկամեցան ընդունել իմաստուն խրատը, այլ դիմադարձ լինելով՝ ասացին. «Եթե չմիաբանես մեր որոշումին, քո զորքից ոչ ոք չի մնա քեզ հետ, չենք կարող ժուժկալել այն տագնապներին, որոնց մեջ է մեր Հայոց երկիրը»: Այդ ժամանակ Աշոտ իշխանն ակամայից համաձայնեց միաբանել Գրիգորի և այլ նախարարների հետ և իրար հետ ուխտի դաշինք կնքեցին տերունական խաչի միջնորդությամբ՝ հավատարմորեն պահպանելու միաբանության սերը:*

*Երբ այս դաշինքը հաստատեցին, հեռացան մեր աշխարհի հրամանատարից և գնալով ապաստանեցին Տայքի ամրություններում, իրենց ամբողջ ընտանիքներով և ունեցվածքով հանդերձ, մանավանդ ապա-*

*վինելով Հունաց արքայի զորքերին, որոնք Պոնտոսի կողմերում էին, քանզի նրանց միջև խաղաղության ուխտ կար Կոստանդին կայսեր հրամանով: Եվ ապստամբների գնդին խառնվեցին բոլոր Հանցանքի որդիները, որոնք ոչ Աստուծո երկյուղն էին ճանաչում, ոչ էլ՝ իշխանների աՀն ու ծերերի պատիվը, այլ իբրև այլազգիներ և օտարացածներ, ասպատակ սփռելով, գերեվարում էին իրենց եղբայրներին ու ազգակիցներին և բազում ավարառություն կատարում, խոշտանգումներով և գանաՀարությամբ տանջելով իրենց եղբայրներին:*

*Այս պատճառով Աստված զղջաց իր ներողամտության Համար ու քանդեց նրանց միաբանությունը, քանզի մի ամբողջ տարի էլ չՀաջողվեց նրանց ապիրատ գործեր կատարել, այլ իսկույն նրանցից Հեռացավ Աշոտ իշխանը, որը նախարարներից ոմանց Հետ եկավ Հասավ Բագրևանդ գավառի Հազր գյուղը, կամենալով միաբանել Իսմայելի որդիների Հետ: Այն ժամանակ նախարարները, որոնք նրա Հետ էին, նենգելով զեկուցեցին չարասեր Գրիգորին այդ մտադրության մասին: Իսկ սա, կամենալով գլուխ բերել վաղուց մտածված դավադրությունը, շուտափույթ կազմեց իր զորքը և նրա ետևից Հետամուտ լինելով՝ ագռավի նման լեռների վրա ընթանալով, գիշերը վրա Հասավ և պաշարեց նրա Հանգստյան կայանը, գիտենալով նրա զորքի երկմտության մասին, որն իրոք չեկավ նրան օգնության: [Գրիգորը] բռնելով նրան՝ Հանձնեց Դավթի ծառաների ձեռքը և Հրամայեց աչքի լույսից զրկել: Ստվերամած խավարով նսեմացավ մեր ամբողջ երկրի պարծանքը, և խոր տխրության մեջ պարփակվեց ոչ միայն նրա անձը, այլև իր ազգի ամենայն Համատոհմ նախարարները: Նրանք Հետո իրազեկ դառնալով՝ ոչնչով չկարողացան օգտակար լինել, այլ միայն նստած ողբով ու վայնասունով լացում էին, քանզի ընկել էր, կործանվել իրենց գլխի պերճության պսակը, և վերացել էր մեր Հայոց ազգի փառքը:*

*Իսկ ուխտադրուժ Գրիգորը, իբրև թե մեծ քաջագործությունից վերադարձած, գնաց Կարնո քաղաք և այնտեղից ամեն կողմ իր Հաղթության ավետիսն առաքեց: Բազում օրեր անց Աստուծո դատաստանը Հասավ նրան՝ իր գործերին արժանի ձևով: Նրա որովայնն ուռեց, ուժգին ցավերով տառապեց նա և այնպես չարաչար մեռավ՝ անՀիշատակ վերանալով մեջտեղից:*

*Նրա փոխարեն իշխան դարձրին նրա եղբորը՝ Մուշեղին, կարճ ժամանակով:*

*Աշոտը, 17 տարի իշխելով, ավելի փառավոր, քան բոլոր նախորդ իշխանները, դավաղիր նենգության Հանդիպեց: Դրանից Հետո 13 տարի ապրելով՝ վախճանվեց խոր ծերության մեջ և փառավորապես տապանի մեջ դրվեց իր [տոՀմիկ] գերեզմանոցում՝ Դարույնք գյուղում:*

**762 Թ. ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐԸ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆՈՒՄ ԸՍՏ ՂԵՎՈՆԴԻ**

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Լ.*** *Այդ ժամանակներում չէր դադարում անօրեն ազգի խառնակիչ ամբոխի խռովարարությունը մեր աշխարհում, քանզի Բելխարի որդիներն ամենուրեք չէին թողնում իրենց հատուկ չարագործությունը: Նրանցից իժաբար ի հայտ եկավ անաստված մեկը, որի անունն էր Սուլեյման, և իր հետ ունենալով պարսից կողմերից եկած հանցագործ մարդկանց, ասպատակեց Վասպուրականը՝ իր չար սերմերի սննդակիցների նման անարժան արարքներ գործելով:*

*Նրանց դեմ դուրս եկան Արծրունյաց տան նախարարներ Սահակն ու Համազասպը և սակավ մարդկանցով ընկան թշնամիների մեջ, իսկ սրանք, մտածելով, որ քիչ են, շրջապատելով ուզեցին սպանել: Սահակն ու Համազասպը տեսնելով, որ գիշատիչ թշնամին շրջապատել է, և քանի որ փախուստի հնար չկար, սուրը գործի դնելով՝ թշնամիների բազմությունը խողխողեցին և իրենք ամբոխից մի կողմ դիմելով՝ ջանում էին ազատում գտնել:*



***Սահակ և Համազասպ Արծրունիներ***
***(բարձրաքանդակ Աղթամարի Ս. Խաչ եկեղեցուց. 915–921 թթ.)***

*Այստեղ սաստիկ խոցված՝ Համազասպն ընկավ երիվարից, և թշնամին, շրջապատելով նրան, սպանեց: Սահակը, երբ տեսավ եղբոր սպանությունը, նրա նկատմամբ ունեցած մեծ սիրո պատճառով իր անձը մահվան մատնեց և երիվարից ցած իջնելով նրա ջղերը կտրեց, իսկ ինքը դայրագին մենամարտում էր և չատերին դիաթավալ գցեց, մինչև որ իր եղբոր արյան վրեժը լուծեց: Ապա կռվում պարտվելով՝ վախճանվեց: Այսպես իրենց կյանքը տվեցին ընտիր նախարարները, որոնք Վահան Արծրունու որդիներն էին:*

*Ապա իմաց տրվեց նրանց եղբորը՝ Գագիկին և նրա հետ եղած այլ նախարարների, որոնք վայով ու ճիչով ելան մարտի վայրը, սակայն*

*չկարողացան թշնամիներին հասնել և դարձան՝ ողբով ու լացով թաղելու մեռյալներին: Թշնամիները վերադարձան նույն ճանապարհով, սակայն սակավ ժամանակ անց Սուլեյմանն ընկավ Գագիկ Արծրունու ձեռքը և բազում ուրիշների հետ սպանվեց:*

## ՂԵՎՈՆԴ ՊԱՏՄԱԳԻՐԸ 774–775 ԹԹ. ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ՄԵԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԼԴ.*** *Այստեղ կպատմեմ Իսմայելի վայրենամիտ ազգի կատարած խստասիրտ չարագործության մասին:*

*Քանզի, երբ Հայաստանի նախարարները տեսան իրենց վրա կախված սարսափելի վտանգը, մահը հանձն առան և ձեռնամուխ եղան մի բանի, որը չէին կարող իրագործել, վասնզի փոքրաթիվ էին: Սակայն լավ համարելով քաջությամբ մեռնել, քան աղետալի կյանք վարել, ձեռնամուխ եղան ապստամբության և մերժեցին Իսմայելին հնազանդվել:*

*Սույն դեպքերի սկիզբը կատարվեց Արտավազդի ձեռքով, որ Մամիկոնյան տնից էր: Գնալով Դվին մայրաքաղաքը, մեծ չափով կազմակերպեց իր զորքը, ստացավ զենք ու պատերազմի գործիքներ, զինվեց զրահով ու սաղավարտով, ամենայն սպառազինությամբ և իրեն մտերիմ ձևացրեց Իսմայելի զորքերին իբրև թե կամենում էր մարտնչել նրանց թշնամիների դեմ:*

*Բաժանվելով նրանց շրջանակից՝ նա հասավ Շիրակ գավառի Կումայրի գյուղը և սպանեց գլխավոր հարկահանին ու նրա մոտ եղած ամեն ինչը վերցնելով՝ ամբողջ տնով գնաց Վրաց աշխարհի կողմերը՝ իր հետ տանելով մեր երկրի բազմաթիվ նախարարների:*

*Լուր հասավ Դվին քաղաք, թե Հմայակի որդիները այդպիսի դառն ոճիր էին գործել: Մահմետը չուտափույթ բազում զորք հավաքեց, [վերցնելով] նաև Աշոտի որդուն՝ Սմբատին, հայոց սպարապետին և այլ նախարարների ու նրանց հետապնդելով հասավ Վրաց աշխարհի այն գավառը, որ կոչվում էր Սամցխե: Գրավելով կիրճերը՝ նա ավարի մի մասը խլեց և նրանց հալածելով փախցրեց Հայոց աշխարհից: Իսկ նրանք գնացին ու պատսպարվեցին Եգերաց աշխարհում, և նա [Արտավազդը] ստանձնեց Եգերաց իշխանությունը, ինչպես նաև Վեռիայի, այսինքն՝ Վիրքի:*

*Այս դեպքերի հետևանքով առավել զայրացավ կառավարիչ (հրամանատար) Հասանը և չուտափույթ մարդ ուղարկեց իր իշխանության*

*բոլոր կողմերը՝ հրամայելով հարկը մեծ բռնությամբ հավաքել: Հույժ սաստկացավ մեր աշխարհի հեծեծանքը հարկապահանջների ձեռքից: Քանզի արծաթի հանումը Հայոց աշխարհում բոլորովին նվազել էր:*

*Այստեղ արդեն նախարարներից մեկի սիրտը ցասումով լցվեց: Սա Մամիկոնյան տնից Հրահատ կոմսի որդին էր, որի անունն էր Մուշեղ: Իր կողմը գրավելով Հայաստանի նախարարներից ոմանց, նա Իսմայելի հնազանդությունից դուրս եկավ և իր գավառում ու իր տանը Իսմայելի որդիներից մի քանիսին գտնելով, որոնք եկել էին իրենց տոհմից մի քանի սպանվածների արյան գինը պահանջելու, խողխողեց նրանց ու սրի քաշեց, իսկ ինքն իր տնով տեղափոխվեց Արտագերս ամրոցը:*

*Այդ ժամանակ նա 260 հոգու հետ գնաց Բագրևանդ գավառը և, բռնելով հարկահաններին, Ապու Մճուր կոչված [գլխավորին] և ովքեր նրա հետ էին՝ սպանեց սրի քաշելով: Այսպիսով միաժամանակ դադարեցրեց հարկի պահանջումը մեր երկրից: Երբ [գործն] այսպիսի ընթացք ունեցավ, նրա մոտ հավաքվեցին բոլոր վշտացյալները ու հոգով տառապածները: Դրանից հետո նրա դեմ կանգնեցին թշնամիներն ամեն կողմից: Նախքան այդ Իսմայելի որդիներից մոտավորապես երկու հարյուր մարդ Կարնո քաղաքից կուռ սպառազինությամբ վրա հասան: Նրանց դեմ նա գիշերանց սակավաթիվ մարդկանցով գնաց Խարս գյուղը, որտեղ այգեստանների մեջ էին բանակ դրել, և շրջապատելով նրանց, փլեցրին այգեստանների թույլ պատերը, որոնք առանց հողի քարերով էին շարված: Ուժեղ դղրդումով գլորվող քարերի հարվածի տակ ընկած երիվարները [մարդկանցից] շատերին ոտքի տակ առնելով սատակեցրին. իսկ [Մուշեղը] ընկածների զենք ու կողոպուտը, ինչպես նաև երիվարները և զենքի ամբողջ սարքն առնելով, տվեց իր զորքին, և ինքը շարժվեց գնաց իր ամրոցի կողմը:*

*Երբ այս աղետի լուրը Դվին քաղաքը հասավ՝ Իսմայելի զորավար Մահմետին, ամեն կողմից տագնապալի [բողոքներ] ստացավ նա և Դվին քաղաքի զորքը հավաքելով՝ տվեց մի զորագլխի ձեռքը, որի անունն էր Ապունճիպ, սպանվածների արյան վրեժը լուծելու: Զորավարը վերցրեց մոտավորապես 4000 ընտիր հեծյալներ, ուշադիր անցավ արքունի պողոտայով և հասավ Բագրևանդ գավառի Բագավան գյուղը: Այստեղ նրանց վրա հասավ Մուշեղը ու նրա հետ շուրջ 200 մարդ: Մարտնչեցին իրար դեմ, Տիրոջից արագ օգնություն հասավ Մուշեղի գնդին, և բազում հարվածներ հասցնելով՝ սատակեցրին Իսմայելի զորքերին: Մնացյալներին փախուստի մատնելով՝ հետապնդեցին մինչև Արուճ ավանը, իսկ շատերին բռնելով, նույնիսկ հենց իրեն՝ զորագլխին, հարվածների տակ սատակեցրին: Մեծ հաղթությամբ*

*վերադառնալով նրանց մոտից՝ թշնամու ավարով մեծապես լիացան:*

*Երբ Հայաստանի նախարարներն այս գործի հաջող ընթացքը տեսան, ամենքը վստահ հետևեցին անմիտ խորհրդին, քանզի կարծում էին, թե Իսմայելի իշխանության ժամանակը լրացել է: Մանավանդ ավելի չատ խաբված էին մի միայնակյացի կարծիքով, որը մոլորության ոգով տարված, մարգարեանում էր սնոտի և ունայն խոսքերով: «Ահա մոտեցել է ձեր փրկության ժամանակը, քանզի այժմ չուտով թագավորության գավազանը կրկին կվերադարձվի Թորգոմի տանը՝ ձեր միջոցով վրեժ լուծելու Իսմայելի ազգից: Իսկ դուք մի վախեցեք նրանցից փոքրաթիվ լինելու պատճառով, քանզի ձեզանից մեկ մարդը հազարների կհաղթի և երկուսը՝ բյուրավորների, քանի որ ձեր պատերազմը Տերն է մղելու, զորացեք և մի վախեցեք»: Այսպես օրըստօրե սուտ և սրտի բաղձալի տեսիլք էր պատմում, և նրանք բոլորը, հավատալով նրան տեսանող (մարգարե) էին կոչում: Այս խոսքերից բոլորը խաբվելով՝ գրգռեցին մեծ սպարապետ Սմբատին՝ Աչոտի որդուն, այս խորհրդին հավանություն տալու: Իսկ նա ակամայից դավաճանեց իր հաստատուն և անընկճելի գաղափարներին ու գնաց այդ խաբեբա և մոլեկան մարդու ետևից:*

*Իսկ Հայաստանի ամենայն նախարարները ի մի վայր հավաքելով՝ իրար երդում տվին և ուխտի դաչինք դրին՝ միասին ապրելու և մեռնելու: Այսպես բոլորը միախումբ հավաքված՝ 5000 մարդ դարձան, քանզի ռամիկ ժողովրդից չատերը եկան խառնվեցին նրանց գնդին: Ապա այդ կողմերից ելան գնացին պաչարելու Թեոդոսուպոլիս քաղաքը, որը Կարնո քաղաքն է, և այն պաչարեցին խրամատներով և ամբողջ ձմեռային ժամանակը մարտնչելով կռվում էին նրանց դեմ, աչտարակներ կանգնեցրին և անցքեր բացեցին քաղաքի արտաքին պարսպի կողմից: Սակայն ոչինչ չկարողացան անել, բացի նրանից, որ մեքենաների քարերով քաղաքի որոչ մարդկանց սպանեցին:*

*Իսկ Աչոտը, Բագրատունյաց տնից, Սահակ իչխանի որդին, որ խոհական հանճարով այր էր, չմիաբանեց վնասակար աղետալի գործին, այլ նրանց ևս խրախուսում էր հրաժարվել մոլեկան միայնակյացի վնասակար խրատներից և զգույչ լինել իրենց անձի և ընտանիքի համար, քանզի, ասում էր, «երիտասարդներ եք և տարիքով կրտսերագույն, գիտեմ, որ չեք կարող դիմադրել բազմագլուխ վիչապի զորությանը, քանի որ հզոր է նրա ուժը և [զորքի] անթիվ բազմություն կա նրա ձեռքի տակ ու զենքերի անչափ պաչար՝ նրա պահեստներում: Բոլոր թագավորությունները, որոնք հակառակ կեցան նրա իչխանությանը, փչրվեցին բրուտի անոթի նման, քանզի հռոմա-*

*յեցոց թագավորությունն էլ չկարողացավ ձեռք բարձրացնել, այլ սարսռալով դողաց նրա առջև և չհանդգնեց դեմ գնալ տերունական կամքին: Դուք ևս անտեղյակ չեք Հունաց արքայի ամբողջ զորության, անձնական քաջության և զորքի բազմության ու պատրաստության մասին, սակայն ամենևին մտքից անգամ չանցկացրեց Հայոց աշխարհը նրա [խալիֆայի] ձեռքից առնել:*

*Երբ գարունը եկավ, Իսմայելի իշխանը գունդ կազմեց Հայոց երկիրը ուղարկելու համար: Նա Խորասանի գնդերից 30.000 ընտիր հեծյալներ հավաքեց ընտիր երիվարներով ու կուռ սպառազինությամբ և տալով մի զորավարի ձեռքը, որի անունն էր Ամր, ճանապարհ դրեց նրան այն լայնանիստ ու հոչակավոր քաղաքից, որը շինել էր հենց ինքը, Աբդլան, ապահովության համար ամրացնելով հզոր ու անառիկ պարսպով և որի անունն էր Բաղդադ:*

*Տեղից չարժվելով՝ զորավարը Ասորիքի կողմերով եկավ հասավ Հայոց աշխարհը, Խլաթ քաղաքը մեծ զգուշությամբ և զենքերի լավ պատրաստությամբ: Երբ քաղաք մտավ, այնտեղի քաղաքացիներից տեղեկացավ Հայոց զորքի որպիսությունը, թե քանի՞ հոգի են, որո՞նք են զորագլուխները, իրար հետ սիրով միաբա՞ն են, թե՞ տարակարծիք, քաջահա՞ղթ են, թե՞ անարի և կամ զենքերի պատրաստություն ունե՞ն, թե՞ ոչ: Այս ամենը տեղեկանալով՝ ըստ այնմ պատրաստեց իր զորքի զորագլուխներին:*

*Իսկ Աշոտը՝ Սահակի որդին, որն այդ քաղաքում էր, թշնամիների գալստյան մասին զեկուցեց Հայաստանի նախարարներին, որպեսզի որտեղ էլ լինեն՝ ի մի վայր հավաքվեն, միասին ապրելու և միասին մեռնելու համար: Իսկ նրանց անհավատալի թվացին նրա նամակի տեղեկությունները, կարծելով, որ դավող խորամանկությամբ կամենում է փրկել [Կարնո] քաղաքը պաշարումից, որպեսզի իրեն իսմայելացոց մտերիմ ցույց տա: Այսպիսի բաներ մտածելով, նրա խոսքերը չընդունեցին, այլ տակավին մտածում էին իրենց նախկին ձեռնարկն իրագործել: Սրանից հետո Արծրունյաց տոհմի նախարարները՝ Համազասպն ու եղբայրները, հավաքեցին Վասպուրական աշխարհի զորքը, նույն ձևով նաև Ամատունյաց տոհմի նախարարները և իրենց զորքը: Օգնության կանչեցին Աշոտի որդի Վասակին, Սմբատ սպարապետի եղբորը՝ Բագրատունյաց տոհմից ու նրա զորքը և առաջ խաղացին Արճեշ ավանի վրա, այն հիմնահատակ քանդելու և նրա զորքը սրի քաշելու համար:*

*Երբ հասան Առբերանի գավառի Բերկրի գյուղը, մնացին, որ բոլորը հավաքվեն: Ռամիկներից (շինականներից) շատերին հրապուրե-*

*լով՝ իրենց ետևից Հետիոտն տարան պատերազմի: Մինչդեռ այս ծրագիրն ուզում էին իրագործել, չուտափույթ լուր Հասավ Իսմայելի զորքի մասին, քանզի մեկը եկավ ու պատմեց նրանց, թե Իսմայելի որդիների բազմամարդ զորքը Հասել և սպասում է ձեզ: Նրան չլսեց Արծրունյաց տեր Համազասպը, այլ Հարվածներով տանջեց նրան իբրև սուտ լուր տարածողի, իսկ ինքը խրոխտացած՝ իր զորքով գնաց Արճեշ ավանի դեմ: Երբ գյուղաքաղաքի մոտ Հասան, բնակիչները Խլաթ քաղաքում Հայտնեցին Ամրին Հայոց նախարարների գալուստը: Նա իր զորքերի բազմության Հետ առաջ խաղաց և, գալով, դարանամուտ եղավ Արճեշ գյուղի մոտ: Մինչդեռ Հայոց գունդը մարտնչում էր ամրոցի դեմ, դարանամուտ եղածներն ամիջապես ելան Թաքստոցից, Թափվեցին Հայոց զորքի վրա և, փախուստի մատնելով, կոտորեցին Հետևակ զորքի մեծ մասը, որ ռամիկ (չինական) մարդկանցից էր բաղկացած, որոնք մերկ էին, առանց զենքի և պատերազմի մեջ՝ անՀմուտ: Սրանք անմիջապես այդ օրվա դառն լույսին Հանդիպելով՝ անողորմ սրով կոտորվեցին, իսկ ոմանք, վախենալով անորոշ ճակատագրից, գետավեժ և ծովաՀեղձ եղան: Նախարարական տոՀմերից վախճանվեցին 4 Հոգի, որոնցից երեքը Տրունյաց տոՀմից էին և մեկը՝ Ուրծա գյուղից՝ իսկ ռամիկ ժողովրդից վախճանվեց 1500 մարդ: Ուրիչները, փախուստի դիմելով, Հազիվ կարողացան իրենց անձերը փրկել: Այս դժոխային չար աղետը տեղի ունեցավ Հրոտից ամսի չորսին, չաբաթ օրը: Թշնամիները Հետամուտ լինելով՝ Հալածեցին Հայոց զորքը մինչև այն տեղը, որ կոչվում է Տայ գյուղ և ապա դադարեցին նրանց Հետապնդելուց և մեծ ուրախություն եղավ նրանց բանակատեղիում:*

*Այն ժամանակ մեր Հայոց աչխարՀը մեծ տառապանքի մեջ էր, իսկ անՀավատ թշնամիները ցնծություն և Հրճվանք էին ապրում: Նրանք չունչ քաչելուց Հետո դարձյալ ՀարձակվեցինԱպաՀունիքի միջով ուղղվեցին դեպի արքունի պողոտան: Հասան Բագրևանդ գավառի Արձնի գյուղը և այնտեղ բանակ դրեցին գետի եզերքում, որը նրա միջով է անցնում: Նրանց Հետ կային զինագործներ՝ ամեն տեսակ զենքերի արՀեստավորներ, որոնք պատրաստում էին պատերազմի զենքեր ու սարքեր (անոթներ):*

*Իսկ այն զորքը, որ Կարնո քաղաքն էր պաչարել, [բնակիչներին] ՀուսաՀատություն էր Հասցրել, քանզի սաստկացել էր քաղաքի սովը, և նրանք ստիպված պատրաստվում էին քաղաքը Հանձնել: Սակայն երբ [Հայկական] գնդի պարտության լուրը Հասավ Կարնո քաղաք, այն ժամանակ Հայոց պատերազմող զորքերը Հուսալքվեցին և քա-*

*ղաքի պաշարումը վերացրին: Նրանք թեպետև կարող էին հունաց կողմերը մեկնել և իրենց անձերը փրկել կեղեքիչների չարասեր ապիրատությունից, սակայն լավ համարեցին իրենց անձերի մահը, քան մեր երկրի կորուստը և Քրիստոսի եկեղեցիների անպատվությունը տեսնել: Այսպես մտածելով, թեկուզև սակավաթիվ էին, քան թշնամիները, ինքնակամ հոժարությամբ դեպի տառապանք դիմեցին և, հավաքելով գնդերը, որոնք 5000 հոգուց էին բաղկացած, հեռացան Կարնո քաղաքից, անցան Բասենի սահմանը դեպի Բագրևանդ գավառը: Հենց որ անցան Արածանի գետը, սրտի արիությամբ թշնամու վրա հարձակվեցին, [նախապես] իրենց աղխը (ունեցվածքը) և երիվարները երկու ասպարեզ հեռու թողնելու և իրենք հետիոտն, գայրագին պատրաստվեցին թշնամու հետ պատերազմի: Թշնամիների գնդերը նույնպես ելան նրանց դեմ բազում պատրաստությամբ:*

*Արեգակը ծագելուն պես պատերազմն սկսվեց: Երբ իրար բախվեցին, նախ հայոց գունդը ուժգին բազում հարվածներ տվեց և, թշնամիներին փախուստի մատնելով, շատերին սատակեցրեց: [Սակայն] կրկին ուժ առնելով՝ նրանք փախուստից ետ դարձան և գայրագին ցասմամբ դիմադրելով՝ արհավիրքով լցրին ռամիկ ժողովրդի բազմությունը, փախուստի մատնեցին նախարարներից ու հեծյալներից ոմանց և նրանց հետ եղած ռամիկներին, քանզի նրանցից շատերին սպանելով՝ դաշտերի վրա փռեցին:*

*Իսկ քաջահաղթ նահատակները, թեպետև սակավաթիվ էին չարաշուք որսողների մեջ, սակայն դառնաշունչ օրհասական բոպեին ահի չմատնվեցին, այլ բոլորը միահամուռ հավաքվելով՝ իրար քաջալերում էին հետևյալ խոսքերով՝ «քաջությամբ մեռնենք մեր աշխարհի և մեր ազգի համար և թող մեր աչքերը չտեսնեն մեր սրբարանների և մեր Աստուծո փառավորման վայրերի ոտից կոխան լինելն ու պղծվելը, այլ թշնամիների սուրը թող նախ և առաջ մեր դեմ ուղղվի, ապա թող անեն, ինչ կկամենան: Մեր անձերը զոհենք ճշմարիտ հավատի փոխարեն և ոչ թե երկրավոր կյանքի սիրուն, քանզի այս ժամանակավոր մահվան դիմաց կա հավիտենական կյանք»:*

*Այսպես իրար քաջալերելով իրենց աչքերն ի բարձունս կարկառեցին, բարձրյալից օգնություն էին հայցում, ասելով՝ «Աստվա՛ծ, քո հայացքը մեզ ուղղիր և փութա մեզ օգնության: Թո՛ղ մեծապես ամաչեն նրանք, որ մեր անձերն են ուզում [զոհել], իսկ մենք, Տեր, քո անունն ենք արտասանում մեր նեղության մեջ և քո անունն ենք փառավորում մեզ պաշարող անձկության մեջ, քանզի ահա մեզ շրջապատված են պահում չարերը, որոնց թիվ չկա, և մահվան երկունքն*

*է մոտենում մեզ»: Այս և դեռ ավելի աղերսական խնդրանքներ և փափագելի մաղթանքներ էին մատուցում Բարձրյալին: Սրանից հետո դարձյալ զորանալով Վերնայինի օգնականությամբ,ետ չկանգնեցին նախապես ընդունված որոշումից, թեև հազար հոգուց ավելի չէին երեսուն հազարի դիմաց: Եվ ինչպես հենց թշնամուց իմացանք, նրանք (հայերը) ասում են իրենց հետ մարտակից ունեին հրեշտակների բազմությունը, որոնք մարդկային կերպարանքով երևացել էին թշնամիներին: Նրանք հավաստում էին նաև, որ տեսնում էին երեցների ու քահանաների, որոնք ավետարաններով, մոմերով ու խնկով առջևից երթալով՝ քաջալերում էին նրանց:*

*[Հայերը], անխնա կոտորելով, վրեժխնդիր էին լինում թշնամուց, մինչև որ նրանց ձեռքերը միանգամայն հոգնեցին զենքերի ծանրությունից: Ոմանք առանց զենքի մնալով՝ ընկան նրանց ձեռքը և խակույն հրաժեշտ տալով մեղանչական կյանքին՝ դիմեցին հանդերձյալ հույսի ակնկալությանը: Այդ երանելի և քաջ նահատակները հետևյալ զորագլուխներն էին՝ Բագրատունյաց տնից Սմբատ սպարապետը և նրա բարձակից ու նիզակակից Սահակը: Մամիկոնյան տնից Մուշեղ զորավարը և Մամիկոնեից տեր Սամուելը, մատաղահասակ և գեղեցկությամբ առույգ, որը մեծ սպարապետի աներձագն էր, Գնունյաց տնից Դաշույն Վահանը և բազում նախարարներ և ռամիկներ, որոնց մեկ առ մեկ անունով հիշել չեմ կարող: Մոտ 3000 հոգի ընկան, որոնց մահը սրտաճմլիկ էր ու վախճանը՝ անագորույն, և հողը նույնիսկ բավական չէր պատերազմի թշվառ զոհերի դիակները թաղելու, այլ ընկած էին բացօթյա վայրում արևի ու փոշու, անձրևի և հողմերի մրրիկի դիմաց:*

*Այն ժամանակ սաստկացավ հաճախակի ողբն ու կոծը Հայոց աշխարհում, քանզի մեծ առաջնորդները և պատվական զորագլուխները մի վայրկյանում վերացան, և ամբողջ երկիրը, խոր տխրությամբ վարակված, մեծապես կոծում էր և ողբում հզոր և քաջ նախամարտիկների վախճանը, որոնք օգնականությունից զուրկ մնալով՝ մատնվեցին գազանաբարո և անողորմ թշնամու ձեռքը: [Մարդիկ] իրենց նեղության մեջ հիշում էին նաև պաշտպան Աստծուն, որի ողորմությունը սկզբից էլ պահել է մարդկային ազգը և մանավանդ իր անունը փառաբանողներին: Հայցում էին նրա հոգատար ներողամտությունը, որպեսզի այս աշխարհի կյանքում տարակուսյալներին և հուսակտուր եղածներին զորավիգ լինի, քանզի Արճեշ ավանում պատահած աղետից հետո ահա վրա հասավ այս չարիքը նույն Հրոտից ամսի 14-ին, երկուշաբթի օրը: Առավել ևս դժնդակ էր նեղու-*

*թյունը նաև այն պատճառով, որ ննջեցյալներին նույնիսկ համարձակորեն լալու և ողբալու հնարավորություն չկար, ոչ էլ իրավունք՝ իրենց տներում սգո հաց կտրելու կամ վախճանյալներին գերեզման դնելու:*

## ԲԱԼԱԶՈՒՐԻՆ ՀԱՅԵՐԻ 850–855 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ԵՐԿՐՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄ

**(*Ֆուտուհ ալ-Բուլդան*)**

### *ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄԸ, էջ 281–282*

*Հայաստանի պատրիկներն իշխում էին իրենց տիրույթներում (երկրներ, աշխարհներ) և ամեն մեկը պաշտպանում էր իր գավառը: Երբ սահմանային ամրությունը գալիս էր որևէ կառավարիչ, շուրջը պտտվում (ուսումնասիրում) էին. եթե նա նրանց հետ զուսպ էր, դաժան և ուժ ու սպառազինություն ուներ, վճարում էին խարաջը ու հնազանդվում, այլապես՝ հայհոյում էին ու արհամարհում:*

*Այսպես, Մամունի խալիֆայության շրջանում[1] կառավարիչ դարձավ Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադը, որը նրանցից (հայերից) նվերներ էր ընդունում և նրանց հետ անձամբ բարեկամաբար չփվում, իսկ այս բանը փչացրեց նրանց և նրան հաջորդող Մամունի նշանակած մյուս կառավարիչների նկատմամբ հանդուգն դարձրեց: Ապա Մուտասիմ Բիլլահը[2] սահմանային ամրությունների (Արմինիա) կառավարիչ նշանակեց ալ-Հասան իբն ալ-Բադղիսիին[3], որը հայտնի էր Մամունի անվամբ: Սա անփույթ գտնվեց (ազատ թողեց) նրա պատրիկների և ազատների նկատմամբ, մեղմ վարվեց այնքան, որ առավել ևս անհնազանդ դարձան տիրակալի (սուլթան) հանդեպ և չարացան նրա նշանակած պաշտոնյաների դեմ: Օմայանների մաուլա Իսհակ իբն Իսմաիլ Շուայբը տեր դարձավ Վիրքին, իսկ Սմբատի որդի Սահլ (Սահլ իբն Սինբաթ) պատրիկն ապստամբեց Հայդար իբն Քաուս ալ-Աֆշինի[4] նշանակած կառավարչի դեմ, սպանեց նրա քարտուղարին, իսկ ինքը հազիվ հոգին ազատեց փախուստով: Ապա Հայաստանի կառավարիչ դարձան պաշտոնյաներ, որոնք բնակիչներից ընդունում էին «ողորմություն» և ինչքան խարաջ էին տալիս, այդքանով գոհանում էին:*

*Սակայն հավատացելոց իշխան ալ-Մուտավաքքիլ Ալ-ալլահը[5], իր խալիֆայությունից երկու տարի անցնելուց հետո Հայաստանի կա-*

*ռավարիչ նշանակեց Յուսուֆ իբն Մուհամմադ ալ-Մարուազիին[6]: Երբ Խլաթ հասավ, ձերբակալեց նրա պատրիկ Աշոտի որդի Բագարատին (Բակրաթ, Բուկրաթ իբն Աշութ) և տարավ Սամառա (Սուռա ման ռաա): Պատրիկները, ազատները և բռնի տիրացողները[7] այս բանից զայրացան: Ապա նա իր մի պաշտոնյային, որը կոչվում էր ալ-Ալա իբն Ահմադ[8], ուղարկեց Սիսականում մի վանք, որը կոչվում էր Բաժակների (սկիհ) վանք (Դայր ալ-Ակդահ) և Հայաստանի քրիստոնյաներն այն շատ էին մեծարում ու պարգևներ ընծայում: Սա հափշտակեց ամբողջ ունեցվածքը և բռնություն գործադրեց նրա մարդկանց (վանականների) նկատմամբ: Պատրիկները զայրացան ու համբերությունից դուրս եկան և իրար միջև նամակագրությամբ միմյանց դրդեցին անհնազանդության ու ըմբոստության: Նրանք գաղտնի գրգռեցին խութեցիներին (ալ-Խուայսիյա), և Արթան անունով հայտնի անհավատ գեղջուկին, հարձակվելու Յուսուֆի վրա, քանզի նա գերել էր նրանց պատրիկ Բագարատին: Նրանցից, ինչպես նաև բռնի տիրացողներից ամեն մեկը ձիավորներ ու ռազմիկներ ուղարկեց այդ բանում նրանց օգնելու: Սրանք հարձակվեցին [Յուսուֆի] վրա Տարոնում (Թարուն), իսկ նա իր մարդկանց ցրել էր գյուղերում: Սպանեցին նրան ու նրա ճամբարում եղած ամեն ինչը տարան:*

*Ապա հավատացելոց իշխան ալ-Մուտավաքքիլ Ա-ալլահը Հայաստան ուղարկեց Բուղա ալ-Քաբիրին (ավագ)[9], որը երբ Բաղեշ (Բադլիս) հասավ, ձերբակալեց Մուսա իբն Զուրարային[10], իսկ սա Յուսուֆի սպանությունը ցանկացողներից էր և այդ նպատակով օգնել էր, քանզի զայրացած էր Բագարատի ձերբակալման համար: Նա (Բուղան) պատերազմից խութեցիների դեմ, ահռելի կոտորած արեց, մեծ բազմություն գերեվարեց, ապա արշավեց Վասպուրականի պատրիկ Գագիկի որդի Համազասպի որդի Աշոտին (Աշութ իբն Համզա իբն Ջաջիկ), որն Աղբակի (ալ-Բակ) տերն էր, երաշխավորելով իջեցրեց իր ամրոցից և ուղարկեց Սամառա:*

*Ապա դիմեց Վիրք, հաղթեց Իսհակ իբն Իսմաիլին, ձերբակալեց և անմիջապես սպանեց, նվաճեց Վիրքը և Առանի ու Հայաստանի արտաքին (բարձրադիր) կողմերում՝ Սիսականում ապստամբած ու խռովարար քրիստոնյաներին ու այլոց տարավ իր հետ, մինչև որ այս սահմանային ամրությունների գոտին այնպես հանդարտվեց, որ նախկինում երբեք չէր եղել: Ապա եկավ Սամառա 241 (22 մայիս 855 – 9 մայիս 856) թվականին:*

*1. Խոսքը Աբբասյան խալիֆա Աբու-լ-Աբբաս Աբդալլահ ալ-Մամունի (786-833) մասին է:*

*2. Խալիֆա ալ-Մուտասիմ Բիլլահ (833-842):*

*3. Ալ-Բաղղիխն Արմինիայի կառավարիչ է եղել 833-835 թվականներին:*

*4. Հայդար իբն Քաուս ալ-Աֆշինը Արմինիայի կառավարիչ է եղել 835-840 թվականներին:*

*5. Խալիֆա Մուտավաքքիլ ալ-ալլահ Ջուֆար իբն Մուտասիմ (847-861):*

*6. Յուսուֆն Արմինիայի կառավարիչ է եղել 850-851 թվականներին:*

*7. Նկատի ունի ընդհանրապես ապստամբներին, որոնց որակում է որպես բռնացողների:*

*8. Ալ-Ալա իբն Ահմադ ալ-Ազդին հետագայում դարձել է Արմինիայի կառավարիչ (865-866):*

*9. **Բուղա ալ-Քաբիր** (Ավագ Բուղա) – ծագումով թյուրք զորավար, որը հռչակվել է խալիֆաթի տարբեր երկրամասերում ծագած ապստամբությունների ճնշմամբ:*

*10. Մուսա իբն Զորարան Բաղեշի և Արզնի արաբ ամիրան էր հայոց իշխան Բագարատ Բագրատունու դստեր ամուսինը:*

## 850-855 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐՆ ԸՍՏ ՅԱԿՈՒԲԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

#### *Հատոր երկրորդ*

#### *ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ (251-252) ԹՎԱԿԱՆ*

*Մուտավաքքիլը դուրս եկավ դեպի Խաղաղության քաղաքը (Բաղդադ) 238 (23 հունիս 852 – 11 հունիս 853) թվականին, վրաններ խփեց Շամմասիյա [արվարձանում], ապա մտավ Բաղդադ, ճեղքեց անցավ ու գնաց Տիզըոն (Մադաին) զբոսանքի:*

*Հայաստանն ապստամբեց, այնտեղ ոտքի կանգնեցին մի խումբ պատրիկներ և ուրիշներ ու բռնացան իրենց գավառներում[1]:*

*Մուտավաքքիլը կառավարիչ նշանակեց Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆին[2], որը պատրաստվեց գնալու այդ երկիրը: Նա բերել տվեց իր զգեստներն ու հագնվեց, վերցրեց իր հողաթափերից մեկն ու հագնվեց և հանկարծ ընկավ մեռած վիճակում, առանց որևէ պատճառի (հիվանդության):*

*Ապա Մուտավաքքիլը կառավարիչ նշանակեց նրա որդուն՝ Յուսուֆին[3], որը եկավ երկիրը, գրեց պատրիկներին և ոմանք պատասխանեցին նրան: Նրա մոտ եկավ Բագարատը՝ Աշոտի որդին (Բակ-*

*րաթ իբն Աշութ) երաշխավորագիր խնդրելու, իսկ նա տարավ նրան Մուտավաքքիլի մոտ և [...]: Նրա դեմ կռվեց Յունան իբն Տուրնիկը (Հովնան որդի Թոռնիկի) ու սպանեց նրան:*

*Երկրում խռովություն սկսեց և Մուտավաքքիլն ուղարկեց ավագ (Քաբիր) Բուղային: Երբ նա հասավ Արզն, նրան ընդառաջ եկավ Մուսա իբն Զուրարան, որը բռնացել էր Բաղեշում (Բաղլիս) և երաշխավորագիր խնդրեց: Նա ձերբակալեց նրան և առաքեց Մուտավաքքիլի մոտ: Ապա գնաց մի վայր, որը կոչվում է Աղբակ (ալ-Բակ), ուր Համազասպի որդի Աշոտն (Աշութ իբն Համզա) էր, որին պաշարեց, հետո երաշխավորագիր տվեց և ուղարկեց Սամառա: Նրա (Մուսա իբն Զուրարայի՞) գլուխը կտրվեց Հասարակաց դռան (Բաբ ալ-Ամմա) մոտ և խաչվեց:*

*Նա գրեց Տփղիսի բռնացող Իսհակ իբն Իսմաիլին, որ գա իր մոտ: Նա պատասխանեց, որ երբեք խալիֆայի հնազանդությունից դուրս չի եկել, իսկ եթե դրամ է ուզում, ապա ինքը կտա, կամ եթե մարդիկ է ուզում՝ կուղարկի, սակայն գալ չի կարող:*

*Նա (Բուղան) հարձակվեց, կռվեց ու հաղթեց նրան, ապա գլուխը կտրեց և ուղարկեց խալիֆային: Ապա հարձակվեց ծանարների (սաննարիյա) վրա, կռվեց, սակայն նրանք հաղթեցին [Բուղային] ու ետ մղեցին և նա փախստական նահանջեց:*

*Այն ժամանակ սկսեց հալածել այն մարդկանց, որոնց երաշխավորագիր էր տվել ու ձերբակալեց: Նրանց մի մասը փախավ ու նամակներ գրեց Ռումի տիրոջը (Բյուզանդիայի կայսեր), խազարաց տիրոջը և սլավոնների (սակալիբա) տիրոջը և մեծ բազմությամբ հավաքվեցին: Նա (Բուղան) այդ մասին գրեց Մուտավաքքիլին, որը կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանիին[4], որը երբ եկավ, ապստամբները հանդարտվեցին և նա նորեն երաշխավորագիր տվեց նրանց:*

*1. Խոսքը 850-855 թթ. ապստամբության մասին է:*

*2. Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆ ալ-Մարուազին 850 թ. նշանակվել է Արմինիայի կառավարիչ, սակայն չի իշխել վերահաս մահվան պատճառով (851 թ. ապրիլի 28-ին):*

*3. Հայաստանի (Արմինիայի) կառավարիչ Յուսուֆ իբն Մուհամմադ ալ-Մարուազի (851-852):*

*4. Մուհամմադ իբն Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանին Արմինիայի կառավարիչ է նշանակվել 857 թվականին:*

## ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻՆ 850–855 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՐԾՐՈՒՆՅԱՑ ՏԱՆ

#### *Դպրություն Բ*

***Գլ. Զ.*** *Նույն այդ ժամանակ[1] մեծ պատերազմ էր Բագարատի[2] և [արաբ զորավար] Մուսեի միջև: Մուսեն զորք գումարեց՝ արքունի հարկերը հավաքելու պատրվակով և մտավ Տարոն երկիրը, որպեսզի պատերազմի Բագարատի դեմ: Հավաքելով իր զորքի ամբողջ բազմությունը, եկավ բանակեց Հայոց իշխանի ձմեռոցի մոտ: Ապա զորակարգ ընդունեց, ճակատ հարդարեց և ներսից փակեց ամբողջ դաշտաձև հովիտը: Զինավառվեցին և ամեն տեսակ պատրաստություններ տեսան Հայոց զորքի դեմ:*

*Երբ Հայոց իշխանը տեսավ, որ արաբների զորքը գալիս է պատրաստությամբ, իսկ իրենք սակավաթիվ են, փութապես աղերսագիր ուղարկեց քաջարի Աշոտ իշխանին, որպեսզի, եթե հնար լինի, անձամբ զորքով ու զենքով արագ օգնության հասնի իրեն: Երբ լրատարները հանդիպեցին մեծ իշխան Աշոտին, նա ընթերցեց աղերսագիրն ու հին հիշատակարանները, [հիշեց] մոտիկ ազգակցությունը[3], միմյանց հետ կապված լինելն ուխտով, որը հաստատվել էր Սուրբ Ավետարանի և Տերունական Խաչի վրա արված երդմամբ, միատեղ հավաքեց Վասպուրական աշխարհի իշխանության բոլոր նախարարների զորագնդերը:*

*Փութապես, առանց հապաղելու յուրաքանչյուրն այնտեղ հասավ իր զորքով՝ իշխան Աշոտը և իր եղբայրներ Գուրգենն ու Գրիգորն իրենց զորագնդերով, Արծրունյաց տոհմից նաև Վահանը, Վասակը, Մուշեղը, Ապուպելճը, Գուրգենը, Վասակը, Ապուջափրը, Մուշեղը, Ապումայան, Վասակը, Վահանը, Համազասպը, Գրիգորի որդի Վասակը, Ապումկդեմը, Մեհրուժանը, Գրիգորը: Բոլոր այս 16 այրերն իրենց զորքով Արծրունյաց տոհմից էին: Իսկ Բագրատունյաց տոհմից՝ Թոռնիկի որդին իր զորքով, Ամատունյաց տոհմից՝ Շապուհն իր ութ ազգականներով ու իրենց զորքով: Գնունյաց տոհմից՝ Հազրի որդի Գրիգորն իր վեց ազգականներով և իրենց զորքով, Ընտրունյաց տոհմից՝ Արտավազդը՝ 7 ազգականներով ու իրենց զորքով, նաև Վասպուրականի իշխանի նախարարներից ուրիշներ՝ Սմբատ Ապահունին, Գրիգոր Քաջբերունին, Վահան Հավնունին, Դավիթ Սեպուհը, Գազրիկ[յան] Ապուհարազը, Թոդորոս Վարազնը, Խոսրով Վահևունին, Խոսրով Ակեացին, Վարդան Գաբայեղենը, Սմբատ Մարացյանը,*

*ինչ-որ Սահակ Սեպուհ, Պատրիկ Անձևացին, Գորգ Հարմացին, Դավիթ Զորապետը և շատերն ազատ տներից: Յուրաքանչյուրն իր զորքով շարժվեց այնտեղ: Մինչդեռ նրանց զորքերը կռվում էին արդեն միմյանց դեմ, հնչում էին փողերը, ծածանվում դրոշները, գոռում գոչում էին վահանավորներն ու նիզակավորները, այրուձին այս ու այն կողմ էր նետվում, ախոյանները հարձակվում էին, կապարճիկները նետեր էին տեղում:*

*Այսպիսի մարտ էր բռնկվել, երբ վրա հասավ մեր քաջ Աշոտը: Ապա միանգամից, հախուռն ու հանդուգն հարձակմամբ դիմեցին այլազգիների վրա, միմյանց ընդհարվեցին և յուրաքանչյուր այր գետին գլորեց իր ախոյանին: Աշոտ իշխանն աչքերը վեր բարձրացրեց և տեսավ, ինչ-որ մեկը հարվածեց իր զորականներին: Նա գոչեց առյուծաբար և հարձակվեց ընտիր այրուձիի վրա, ջարդեց նրա աջ թևը, ապա հարձակվեց ձախի վրա: Բոլորին սրի ճարակ դարձրին: Խիզախեցին, որպես կտրիճներ, ձայնեցին ինչպես արծիվներ ու առյուծի կորյուններ և վրա հասան ու պատառոտեցին որսը: Հույժ հանդուգն հարձակման հետևանքով ավելի շատ սպանեցին ձիերի սմբակների տակ դիաթավալ անելով, քան սրով: Թշնամիների կողմից չգտնվեց մեկը, որ ի զորու լիներ ընդդիմակայել նրանց: Սրից փրկվածները փախան անտառների ապահով տեղերը: Նրանց կեսը հասավ շահաստան Բաղեշ, որտեղ և մնաց հիմնական զորքը: Իսկ [հայ] իշխանները հետապնդեցին նրանց, ովքեր փախել ընկել էին [Բաղեշի] ամրոցը: Ապա պաշարեցին քաղաքն ու ամրոցը, մինչև որ այնտեղից դուրս եկավ հետիոտն ու հեծեծող մի տիկին և [խնդրեց] բավականանալ կատարած քաջությամբ, որով Աստված օժտել էր Աշոտին: Համոզեց և պաշարումից ազատ արձակեցին նրանց, որովհետև Բագարատի քույրն էր[4]: Հայոց զորքը հաջողությամբ ավարտեց պատերազմը և վերադարձավ մեծ հաղթությամբ: Ավարի մատնեցին բանակատեղը, սպանվածների վրայից հանեցին զգեստներն ու այլ իրեր, հավաքեցին բազում ավար, ոսկի, արծաթ, գեղեցկազարդ զենքեր, խիզախ այրերի զարդեր ու զենքեր, ընտիր երիվարներ՝ իրենց զարդարանքով: Ապա յուրաքանչյուրը մեծ և անտրտում խնդությամբ վերադարձավ իր տեղը:*

*Երբ անօրեն Մուսե զորապետը տեսավ, որ գլուխ չեկան իր չար դիտավորությունները, և իր զորքը կրեց մեծամեծ հարվածներ, աճապարեց գուժկան ուղարկել արքունիք, արքային տեղեկացրեց Վասպուրականի իշխան Աշոտի արարքների մասին:*

*Երբ Ապուսեթը վերադարձավ արքունիք, արքունի հարկերի վե-*

*րակացությունը հանձնեց Մուսեին: Արքունիքից եկավ նաև հարկերի մի ինչ-որ վերակացու՝ Ալա անունով ամիրան. որին կոչում էին Ծովափի: Ապուսեթը հանձնարարեց նրան մտնել Վասպուրական երկիրը և մեծ զորքով մնալ այնտեղ, մինչև որ Հայաստանի բոլոր կողմերից ամեն մեկն իր մոտ կբերի սահմանված չափով հարկն ու տուրքը: Նա խուժեց Աղբակ գավառը և ասպատակներ սփռեց Վասպուրական երկրի տարբեր կողմերը, գոփեց, ավերեց հափշտակեց, թալանեց ինչքն ու ստացվածքը: Հափշտակում էին տղամարդկանց, կանանց և նրանց ժառանգությունը: Ասպատակեց նաև Անձևացյաց իշխանության կողմերը, որտեղ նույնպես ավարի մատնեցին՝ պատճառ բերելով այրուձին պետքերի համար [տրվող] ռոճիկը:*

*[Աշոտ] իշխանը հրովարտակի միջոցով նրան հայտնեց հետևյալը. «Հայոց աշխարհն ես եկել արքունի հրամանով, որպեսզի վերցնես արքունի հարկերը: Մի՞թե արքունուստ ունես նաև հրաման՝ գերել, թալանել ու ավերակ դարձնել մեր երկիրը: Բայց չէ՞ որ մենք երբեք դանց չենք արել թագավորի հրամանը և չենք խափանել արքունի հարկերը, ինչպես անում են ապստամբները, անհնազանդներն ու իրենց տերերին ծառայելու մեջ անկարգները: Ուրեմն այստեղից վե՛ր կաց, գնա Հայոց քաղաքներից որևէ մեկը, ինչպես վայել է աշխարհակալներին: Մենք քեզ կուղարկենք հասանելիք հարկերը, կքաղցրացնենք քո միտքը, իսկ դու անխնա մի ասպատակի ու մի ավերի իմ երկիրը»:*

*Նա արհամարհեց իր մոտ առաքվածներին, խելքը չկտրեց ըստ արժանվույն պատասխանել և շարունակեց նույն ձևով չրջել Վասպուրական աշխարհի բոլոր կողմերը: Ապա հասավ Արճուճ գյուղը, մնաց այնտեղ և դիտակներ թողեց բլուրների գագաթներին:*

*[Աշոտ] իշխանը հույժ զայրացավ այսպիսի արհամարհանքից և յուրաքանչյուր տոհմից վերցրեց ազատագորքի բազմությունը և զինավառված, այրուձիի ընտիր հեծյալներով հարձակվեց նրա վրա: Դետքն այլազգիների զորքին իմաց տվեց, նրանք բորբոքեցին պատերազմ հայերի դեմ, և ընդհարվեցին միմյանց: [Աշոտը] զորքը բաժանեց երեք մասի: Առաջին զորագունդը տվեց Գուրգենի և նրա օգնական Վահան Հավնունու ձեռքը: Երկրորդ զորագունդը հանձնեց Գուրգեն Ապուպելճի ձեռքը: Սրան օգնական էր Վահան Արծրունին: Իսկ երրորդ գունդն իշխանը վերցրեց իր ձեռքը: Ինքը նաև պատերազմ հարդարողն էր: Ապա քաջաբար հարձակվեցին, արիագոչ ձայներով դիմեցին թշնամիների վրա: [Մարտն] սկսվեց այգաբացին և ընդամենը մեկ ժամում [Աշոտը] հաղթանակ տարավ և փախուստի մատնեց Ալայի զորքի բազմությանը: Այնտեղ, իրարանցումի մեջ սպանվեց նաև Ալայի*

*եղբայրը: Անհնարին չափով արյուն հեղվեց: Քաջությամբ էին կռվում [Աշոտ] իշխանի եղբայր Գուրգենը և Վահան Հավնունին, որոնք վաստակեցին հաղթողի անուն: Նրանք սրի քաշեցին թշնամի կողմին, ամբողջ հովիտը լցրեցին կոտորածների դիակներով: Ջրից ցած հոսած ջուրն սպանվածների չատությունից դառնում էր արյուն: Իսկ ինքը՝ Ալան փրկվեց և սակավաթիվ անձանց հետ ճողոպրեց Բերկրիի կողմերը: Արաբները հայոց զորքերից սպանեցին քչերին՝ մի քանիսին աննշաններից, և վիրավորեցին Գուրգեն իշխանին:*

*... Արդ մյուս տարի՝ վեցերորդ հոբելյանին, 72-րդ օլիմպիադային, XX ինդիկտիոնին և Հայոց թվականության 300 (851)-ին թագավորն իր սինկղիտոսների և բաբելացի բոլոր մեծամեծների հետ հաստատ նպատակադրվեց Հայոց աշխարհի իշխաններին զրկել իշխանությունից, որպեսզի խլեն նրանց ժառանգությունը: [Կամեցան] ամենից առաջ ձեռք գցել Աշոտին՝ իր տոհմի հետ և Բագարատին ու իր տոհմին: Որովհետև ասում էին՝ «Եթե նրանց վերացնենք մեջտեղից, ոչ ոք չի կարող ընդդիմակայել մեզ»:*

*Նույն այդ ժամանակ արքան գումարեց զորք ընտիր հեծյալներից, զորեղ այրերից, զորքով ու զորապետներով և տվեց ինչ-որ Հովսեփի[5], Ապուսեթի որդու ձեռքը: Նա ստացավ Հայոց աշխարհը, փոխանակ հոր՝ Ապուսեթի, որովհետև սա մահացավ ճանապարհին, Ասորեստանի կողմերում: Մտավ հայերի երկիրը, որպեսզի, ինչպես մտադրվել էին, տանջեն նրանց: [Արքան] ասաց նրան. «Եթե քեզ հաջողվի մեր խորհածը հայերի ու նրանց իշխանների վերաբերյալ, կկատարվեն մեր իղձերն ու ցանկությունները, և [եթե] դու կարողանաս Հայոց իշխաններին, մանավանդ Վասպուրականի Աշոտ իշխանին մեզ մոտ հասցնել կապանքներով, այդ երկիրը կտամ քեզ և քո զավակին ի ժառանգություն: Ուրեմն փութա՛, պինդ կա՛ց, հասի նրանց ետևից, մի՛ տատանվի ու թուլանա այդ գործում»:*

*Այնժամ զորապետը մեկնեց նրա մոտից և լցվեց չար դիտավորություններով ու հնարիմացությամբ: Ատրպատականի կողմից մտավ Վասպուրական երկրի Աղբակ գավառը և բանակեց Արծրունյաց ոստան Ադամակերտում: Այնտեղից սկսեց ասպատակներ սփռել, ավարի մատնել և ագահաբար իր մոտ հավաքել երկրից կողոպտածը: Նա ձևացավ բարեկամ ու խաղաղասեր և արքունի հարկերի պատրվակով իր մոտ կանչեց [Աշոտ] իշխանին: Բայց արաբները նույն զորագնդից իմաց էին տվել իշխանին՝ չգնալ նրա մոտ, հասկացրել էին, թե ինչ էր նա խորհել իր մասին:*

*Իսկ [Աշոտ] իշխանը զինավառվեց, բազում պատրաստություննե-*

*րով, իր ազատագորքով և իրեն ենթակա բոլոր տեղական իշխանների հետ խույս տվեց և շրջում էր Մարդաստանի, Հասկո ձորի կողմերը: Ապա զորապետի մոտ ուղարկեց դեսպանների և գրեց այսպիսի մի հրովարտակ:*

*«Թագավորների ու աշխարհակալների սովորությունն է մեծ հոգածությամբ խնամ տանել երկրի բարեշինության մասին, թեթևացնել իշխանության լուծը, ծանրությունները, մեղմացնել հարկերի համար կատարվող խոշտանգումները, որպեսզի խպառ չվերանա երկրի բարեկարգությունն ու զորությունը, կուսակալների, քաղաքային պաշտոնյաների ծառայակամ պաշտոնավարությունը, հարկերի ու զորքերի հավաքումը, որպեսզի երկիրը լինի շենության ու խաղաղության մեջ, և անխափան ուղարկվեն արքունի հարկերը: Հույս ունենք, որ դուք էլ եք կամենում նույնը: Եվ մենք տեսնելով քո բարյացակամ խնամարկությունը երկրին և բարեկամության երախտիքը մեր հանդեպ, կծառայենք սիրահոժար, հավատարմորեն և մեծ փութով կկատարենք քո հրամանները»: Այսպիսի հաճելի ու դյուրընկալ շատ խոսքեր գրեց իր թղթում: Նույնպես և Աշոտ իշխանի մայրը՝ Սահակի և Տարոնի իշխան Բագարատի քույրը, որն իմաստուն կին էր՝ թե՛ խոսքի և թե՛ գործի մեջ, և հույժ խոհեմ ու աստվածասեր, մեկնեց բազմաթիվ ընծաներով և հանդիպեց Հովսեփին, խնդրեց հաշտություն, խաղաղություն հաստատել իր որդիների և ամբողջ Վասպուրական աշխարհի հետ: Իսկ նա ընդունեց պարգևը և կատարեց խնդրանքը: Ապա պատանդներ վերցրեց անվանի ու պատվական մարդկանցից և մեծ պատվով վերադարձրեց Աշոտի մորը: Իսկ ինքը խաղաղությամբ, առանց մեծ վնասների անցավ Վասպուրական աշխարհի միջով և իր հետ տարավ պատանդներին: Ապա անցավ Բզնունական գավառով, մտավ Խլաթ, քանզի կամենում էր սպասել պատեհ ժամի, որպեսզի նենգությամբ խաբի և որսա [իշխաններին]:*

*Երբ ամիրան հասավ Խլաթ, մտավ և բանակեց քաղաքի մեջ եղած ամրոցում: Ապա բարևի թղթով հրավիրակներ ուղարկեց Բագարատի մոտ, որպեսզի առանց կասկածների ու վախի գա իր մոտ: Նույն թղթում գրում էր, թե Հայաստան աշխարհը վստահում է նրան, քանի որ ինքը մեկնելու է արքունիք, իբր թե վերահաս ձմեռային եղանակի սաստկությունից, և հյուսիսային սառնաշունչ օդի խստությունից, որոնց անընտել էր համարում իրեն:*

*Իսկ իշխան Բագարատը, քանզի չուներ նենգադրուժ կասկածներ թագավորի ու նրա զորքի հանդեպ, անխիղճ համարձակությամբ ու տիրասեր մտածումով ելավ գնաց ժամանած կոչնակների հետ,*

*որպեսզի կատարի զինվորական ծառայությունն ըստ աստվածային պատվիրանի ու թագավորական հրամանի: Ոչինչ չգիտեր նրա խաբեության մասին, ուստի սխալվեց: Հետը վերցրեց նաև Աստվածաշունչ գրքի Սուրբ Կտակարանները, քահանայական դասի պաշտոնյաների բազմության հետ: [Հովսեփը] բռնեց նրան և իր ամբողջ ազգատոհմը՝ Բագրատունյաց տոհմից, կապեց երկաթյա կապանքներով և ուղարկեց Սամառա: Իսկ ինքը եկավ ձմեռելու Տարոնի Մուշ քաղաքում, ունենալով իր հետ նաև պատանդներ Վասպուրականի Արծրունյաց նախարարներից և նրանց ազատներից: [Տարոն] գավառի բնակիչներին գերեվարեց, Ասորեստանի և արաբական տերության բոլոր կողմերում վաճառելու համար: Իսկ գերիների կեսին պահեցին իրենց մոտ, քաղաքում, որպեսզի իրենց ջրկիրություն անեն և փայտ կոտրեն: Աշխատեցնում, չարչարում էին նրանց՝ ձմեռվա դառնաշունչ սառնամանիքին: Իսկ ազատվածները փախան երկրի տարբեր կողմերը: Ամբողջ գավառն ավերվեց, բացի լեռնակողմից, որի [բնակիչները] մնացին Խութ անվանված լեռների վրա, իրենց ամրոցներում:*

***Գլ. Է.*** *Երբ ձմեռը կես եղավ, եղանակը խստացավ, դարձավ միգախառն ու մրրկալից: Թանձր ձյունը հարթ ու հավասար դիզվեց լեռան ստորոտներում, որտեղ կառուցված էր Տարոնի քաղաքը[6]: Այդտեղ էր ամրացել արաբների զորապետը, նման ծերացած արջի, որը ձմեռ ժամանակ սնվում է արմատիքներով և անցնելով կենաց ու մահվան միջով, որջանում իր բնում: Հովսեփը, արաբների զորապետը սպասում էր ձմեռն անցնի, որպեսզի հարձակվի Հայոց երկրի վրա, սրածությամբ, գերեվարությամբ ու մեծ-մեծ հարվածներով երկրի մեծամեծներին գերության տանի, երկրում նշանակի գործավարներ, որոնք իրենց հրամաններով պիտի հորինեին երկրի կարգերը և իրենց ընտանիքներով հանդերձ նստեին Հայաստանի ամրոցներում:*

*Այն ժամանակ լեռան բնակիչները, երբ տեսան, որ իշխանին տարան ի գերություն, և իրենց եւս սպասում են նույն փորձությունները, ինչ կրեցին դաշտեցիները, եկան միասին Խութի մեկնազենների բազմությունը, ձմեռային կարիքների համար ձեռք բերած արհեստի իրենց միջոցներով: Նրանք վերցրել էին իրենց նիզակները, որ միշտ կրում էին, ի զգուշություն անտառներում որջացած գազանների կամ իրենց վրա հարձակվող թշնամիների: Հարձակվեցին [Մուշ] քաղաքի վրա, պաշարեցին այն, զորքը մատնեցին սրի, արգելանոցից հանեցին Վասպուրականի պատանդներին, արձակեցին գերիներին ու բաժանեցին իրենց մեջ ավարը:*

*Բայց ինքը՝ կարծեցյալ մարզպանը փախավ ընկավ մեծ եկեղեցին,*

*որ համուն [Ս.] Փրկչի մեծ ծախսով՝ 300 հազար [դահեկանով] կառուցել էր Բագարատ իշխանը: Եվ այն ժամանակ նա սարսափից դողահար թաքնվեց գմբեթում: Մեկնազենները շրջապատեցին եկեղեցին, նրանցից ոմանք բարձրացան մինչև գմբեթի փորվածքը և ինչ-որ մեկն աշտեով հարվածեց [Հովսեփի] թիկունքի մեջտեղը և դուրս հանեց թևատակից՝ թոքերի միջով: Նա փչեց շունչը և թաղվեց էշի պես:*

*Ես իմ աչքով տեսել եմ այն մարդուն, ով հարվածել էր [Հովսեփին]: Սրա մասին տեղեկացա նրանից:*

### Դպրություն Գ

***Գլ. Ա.*** *[Այդ] ժամանակ թագավորը, իր տերության մեծամեծներով հանդերձ, դարձյալ նստեց խորհրդի, որպեսզի անվրեպ ու անսխալ ըմբռնի Հայոց աշխարհում կատարվածը: Բազում և ճիշտ խորհուրդներից սինկղիտոսները հաստատապես ընտրեցին միայն այս մեկը, և ասացին թագավորին. «Զորք գումարի, գնա և մտիր Հայոց երկիրը: Քո իշխանության տակ գտնվող բոլոր ազգերից քո մոտ հավաքի ընտիր այրուձի և չարժի գետից անդին: Երբ վրա կհասնես հայերին, ամենից առաջ կգերես Աշոտին, կբերես այստեղ, որից հետո բոլոր մյուսները դյուրությամբ կմտնեն քո իշխանության տակ, և ամենքին առանց երկբայության կհնազանդեցնես քեզ: Զպետք է ջանանք վրեժ առնել հարկերի, զինվորության և ուրիշ ծառայության խափանման կամ թագավորի դեմ կռվելու համար, այլ գերվածներին կստիպենք հեռանալ քրիստոնեական հավատից և պաշտել մարգարեի ու օրենսդրի կրոնը, և դյուրությամբ կկատարվեն մեր բոլոր մտադրությունները: Նրանց կխոշտանգես ծեծով, բանտով ու պեսպես տանջանքներով: Սպառնալիքներով, ողոքմամբ, հարստության խոստումով նրանց կենթարկենք մեր թագավորությանը, և քրիստոնեություն անունը կվերանա նրանց միջից»: Այս խորհուրդը հույժ դուր եկավ թագավորին, և նա մեծապես ուրախացավ:*

*Այնժամ թագավորն արձակեց հրովարտակներ և ուղարկեց արագագնաց սուրհանդակներ իր տերության բոլոր կողմերը՝ Ասորեստանի և Բաբելոնի, Թուրքաստանի և Խուժաստանի, մարերի, ելիմացիների ու եգիպտացիների հեռաբնակ վայրերը, Արաբիայի ներքին կողմերը, մինչև Սակաստանի սահմանները, այդ երկրների զորքերին ու զորագլուխներին, նահանգապետներին, քաղաքագլուխներին, հազարապետներին, կուսակալներին ու մեծամեծներին, ժամանակ տվեց փութով ներկայանալ՝ իրենց թագավորաբնակ քաղաքը: Եվ ամենքը*

*Թագավորի հրամանով բոլոր կողմերից գումարեցին այրուձի՝ սպառազեն այլ հորինվածով հանդերձ և անհապաղ, արագությամբ եկան ժամադրված տեղը:*

*Երբ զորապետները եկան Թագավորի մոտ, սկսեց խոսել, ասելով, «Մեր նախնյաց Թագավորության սկզբից, երբ աստված բազում Թագավորների գահը տվեց նրանց ձեռքը, մինչև մեր օրերը, ոչ ոք ի զորու չեղավ դիմակայել մեզ, ո՛չ հեռավոր և ո՛չ էլ մերձավոր երկրներից: Ոչ ոք այսչափ աղետներ ու տառապանքներ չհասցրեց մեզ, մեր ազգատոհմին, զորքին ու զորապետներին, որչափ Վասպուրականի Աշոտ իշխանը: Ուրեմն, արիացե՛ք, եղեք տղամարդ և ելեք Հայոց երկրի վրա, [մատնեցեք] սովի, սրածության և գերության: Իշխաններին, կուսակալ իշխաններին, ազատներին ու ազատորդիներին կապանքների մեջ դրած, փութով կբերեք մեզ մոտ, և այն ժամանակ դուք կբնակվեք նրանց երկրում, որն ի ժառանգություն կտրվի ձեզ և ձեր որդիներին: Բայց նախ Աշոտին և նրա ազգատոհմին կբերեք այստեղ»:*

*Նա [Թագավորը] ստուգեց և տեղեկացավ ամեն ինչ, նրանց զորագլուխ կարգեց Բուղա անունով, ազգությամբ Թուրք մի մարդու: Իր առջևի բազմությանը հրամայաբար պատվիրեց անսալ նրա խրատներին ու հրամաններին: Սա արաբների ամբողջ տերության գլխավոր հրամանատարն էր, և ո՛չ ոք, մեծից մինչև փոքրը, չէր համարձակվում ընդդիմանալ նրան: Նույնիսկ ինքը՝ Թագավորը լսում էր նրա խրատները: Նա համակված էր ապիրատ ու սատանայանենգ հնարներով, չար դիտավորություններով: Սաստիկ հոխորտում էր և վիշապի պես գոռալով ահաբեկում հեռավորներին և մերձավորներին:*

*Նույն ժամանակ Թագավորի մոտից մեկնեց այդ մարդը՝ Բուղան, որի ներսում որջացել էր սատանան իր զորությամբ և որի բաղձանքն ու ախորժելի զբաղմունքն էր անմեղ մարդկանց միսն ու արյունը, ինչով հագեցնում էր իր՝ չլսված գազանաբարո կատաղությունը:*

***Գլ. Բ.** Այն ժամանակ Բուղան եկավ մտավ Խլաթ քաղաքը, ճանապարհվեց դեպի Ապահունիքի կողմերը: Զորքը բաժանեց երկու մասի և հրաման տվեց մտնել Վասպուրական երկիրը, ողողել, գերել, Թալանել, ավերել ու բնաջինջ անել, սրի քաշել, մարդաԹափ անել բազմամարդ գյուղերն ու ավանները, մնացածներին, կանանցով ու մանուկներով հանդերձ, վարել գերության: Իսկ իշխան Աշոտին կապանքներով տանել Թագավորի մոտ, որպեսզի վրեժով հատուցի իր արարքների և արաբացոց տերության դեմ ապստամբելու համար: Այնուհետև զորքի մի մասը տվեց Ժիրաք անունով ինչ-որ զորապետի*

*ձեռքը և հղեց նրան Ռշտունիքի կողմերը: Իսկ զորքի մնացած բազմությունը վերցրեց իր հետ և գնաց դեպի Ապահունիք:*

*... Սրանից հետո Ժիրաքը գնաց այնտեղից, ապա եկավ մտավ Վանտոսպ և անձամբ հրկիզեց Արտամետ ավանի մեծ եկեղեցին:*

*Իսկ ինքը՝ Բուղան շարժվեց Աշոտ իշխանի ետևից: Նրա հետ էին նաև Հայաստանի արաբները, որ բնակվում էին մեր աշխարհի այլևայլ կողմերում և առաջնորդում էին Բուղային՝ մեր երկրում ել ու մուտ անելիս:*

*Աշոտ իշխանը կամաց-կամաց ամփոփվեց ընտանյոք հանդերձ: Նրա հետ էին ոմանք իր ազատներից՝ Մուշեղ Վահևունին, որ ուներ տանուտերական պատիվ, Վահրամ սեպուհը՝ իշխանի թիկնապահը, Վահրամ Տրունին, Հասանը և պաշտոնավոր սեպուհներից ուրիշներ: Եկան մտան Նկան բերդ-դղյակը, որը Թոռնավան գավառում էր: Փնտրում էին, քննում, թե ինչպես կարող են ելք գտնել վերահաս վտանգից:*

*Երբ արաբացոց զորքն իմացավ, որ իշխանը մտավ ամրոցը, այնուհետև բազմությամբ հետամտելով, անել վանդակի պես խսկույն շրջապատեց ամրոցը:*

*Իսկ [Աշոտ] իշխանը ելավ պարսպի վրա, հպարտությամբ ճեմում էր, ինչպես առյուծի կորյուն, առ ոչինչ համարելով հրոսակներին, որ վրա էին հասել ու շրջափակել իրեն: Որովհետև կարծում էր, թե իր նիզակակիրները, ազատագունդ զորքը, զորագլուխները, որ մտել էին իր հետ Նկանի անձավը, համախոհ են ու գործակից իրեն: Մինչդեռ [արաբներն] ավելի ու ավելի էին սաստկացնում մարտը:*

*Այնժամ խորհրդի նստեցին իշխանն ու իր տոհմակիցները՝ Վահան և Մուշեղ Արծրունիները, նրանց հետ եղած ազատների զորագունդը, որպեսզի թերևս կարողանան համաձայնեցնել [Բուղա] զորապետին՝ հրաժարվելու իր հղացած դիտավորություններից և դադարեցնելու մարտը, վերջ տալու խառնակություններին: Ինչ-որ պահանջում է,— ասացին,— թող վերցնի ըստ իր կամքի, [կամեցան] հաստատել և նրան տալ գյուղեր, ագարակներ, վճարել արքունի հարկը և տալ խաղաղության պատանդներ:*

*... Մինչդեռ նույն ժամանակ բերդում արգելվածները՝ ազատ տոհմերից, խսկույն անջատվեցին ուխտած միաբանությունից և [նենգեցին իշխանին], մեկնեցին զորապետի մոտ և խնդրեցին խաղաղություն:*

*... Այնժամ իշխանը, իմանալով նրանց նենգությունն ու խորամանկ կեղծավորությունը, և որովհետև ոչ ըստ նրա հրամանի էին կարգա-*

*վորում ամրոցի պաշտպանության կարիքները, ասաց նրանց. «Գնացեք զորապետի մոտ, տեսեք հավաստի և հասու եղեք, իմացեք, թե ինչպես կարող եք նրան համաձայնեցնել խաղաղության»:*

*Այն ժամանակ գարշելի դեմքերից դեն գցվեց կեղծավոր քողը: Պատասխան տվեցին, ասելով. «Դու ինքդ վեր կաց գնա, նրանից լսիր, ինչ որ կցանկանաս և քեզնից կվերանա ապստամբի [անունը] և թագավորի դեմ ապստամբողի՝ քո մասին եղած կարծիքը»:*

*Երբ [Աշոտ] իշխանն իմացավ, որ նրանք վճռել են դիմել չարության, խոսում են խաբեությամբ, գաղտնի քրթմնջում են, հրաժարվում կատարել իր հրամանները, պատասխան տվեց, ասելով. «Դուք ծածուկ ի՞նչ եք կամենում անել, ինչո՞ւ եք միմյանց հետ հղանում գաղտնի դիտավորություններ: Եթե չար եմ թվում ձեր աչքին, ապիրատություն եմ գործել ձեր հանդեպ կամ խարդախությամբ վերաբերվել, ահավասիկ իմ երեսին տվեք պատասխան և ցույց տվեք հականե հանվանե, մեկ առ մեկ իմ գործած ամեն մի հանցանքը, ասացեք ի լուր բոլոր զորականների և մի՛ ամաչեք ճշմարտություն ասելուց: Չէ՞ որ իբրև հայր գրկել, գգվել եմ ձեզ, հավաքել, ինչպես հավը ձագերին, թևերիս տակ՝ պաշտպանելու համար, և դուք ամենուրեք ապահով եք եղել իմ ձեռքի տակ և անհոգ, ինչպես անմատույց քաղաքում: Իսկ դուք այսպես եք հատուցում ինձ...»:*

*Իսկ նրանք, քանզի հաստատապես միացել էին արաբացոց իշխանի նենգադրուժ մտադրությանը, պատասխան տվեցին, ասելով. «Չենք կարող դիմադրել արքունի իշխանության չտեսնված զորության, և ոչ էլ այս բերդի ամրություններն են այնքան վստահելի, ինչքան մեզ էր թվում, և սրա միջի պաշարներն էլ բավական չեն, էլ չենք ասում ուրիշ բաների մասին: Քիչ են նաև բերդի պահապան ռամիկ զինվորները: Այս ամենի համար, հարկ է, որ դու գնաս, որպեսզի, քո՝ որպես ապստամբի [մասին] եղած կարծիքը վերանա, և այդ տառապյալները, որ զուր տեղը գաղթել և եկել ապավինել են այստեղ, արձակվեն յուրաքանչյուրն իր տեղը, և երկիրը հանգիստ առնի թշնամիների ասպատակությունից, վրա հասած ավերից ու ապականությունից: Եվ եթե գնաս կամովին, թերևս չատերին, նաև քո անձին օգուտ լինի: Ակամայից մեկնելդ, նեղողին չարչարելով պահելը միգուցե վնաս տա նաև քեզ, և այնուհետև ոչ ոքից չի հասնի օգնություն»:*

*Այս լսելով, հաստատ իմացավ նրանց նենգագործությունը և աչքերը բարձրացնելով առ աստված, աղոթեց, ճաշակեց մի քիչ հաց ու գինի, գոհացավ և թախանձագին նայեց իր ընտանիքին, ապա վեր կացավ, իջավ ամրոցից, եկավ վայրի ոստխի առջև, ողջույն տվեց ըստ*

*նրանց սովորության: [Բուղան] հարցրեց. «Դո՞ւ ես Աշոտը»: Պատասխանեց. «Այո, ես եմ»: Կրկնեց, երրորդեց, բայց լսեց նույնը: Ապա երկար խոսեց և նրա առաջ դրեց մեղադրական բազում խոսքեր, բայց նրանից լսեց դիպուկ ու մտացի պատասխաններ և հրամայեց նստել:*

***Գլ. Գ.** Այն օրերին, մինչ մնում էին կապանքների մեջ [Աշոտ իշխանն ու նախարարները՝ յուրաքանչյուրն ընտանյոք, [Բուղան] կազմեց զինվորների զորագունդ, ընտիր այրուձի, զինավառվեց բազում պատրաստությամբ և Աշոտ իշխանին ու նրա որդի Գրիգորին, Վահան Արծրունուն և նրա որդի Գագիկին, որը նաև Ապումրվան էր կոչվում, Վահանի եղբայր Մուշեղին, տիկին Հրանույշին և ազատատոհմերից ուրիշների, կապեց, նստեցրեց ուղտերի վրա և փտարեց Սամառա: Նրանց դրեցին տուպրակաձև տաղավարների ներքո և ուղարկեցին Պարսկաստանի կողմերը: Ճանապարհեց Ատրպատականով, կասկածում էր, թե գուցե Գուրգենը կամ որևէ մեկը Արծրունյաց տոհմից և նրանց ազատներից՝ Վասպուրականի կորովի հեծյալներից, վրա հասնի և ազատի նրանց իր զորքից և դուրս հանի յուրայինների ձեռքից:*

*Երբ [Աշոտ] իշխանը հասավ արքունիք, նրա ոտքերը կապել տվեցին կրկնակի շղթաներով և դրեցին բանտի մեջ: Ապա [արքան] սպառազեն զինվորներին հրամայեց պահել նրան, մինչև ինքը կնստի դատաստանի, նրանց կմտցնի ատյան՝ հարցուփորձի և կքննի այն գործերը, որ կուտակել դրել էին իշխանի վրա:*

***Գլ. Դ.** ... Սրանից հետո Բուղան իր մոտից զատեց ավելի քան 15 հազար մարդու՝ բոլոր ազգատոհմերից, մեծամեծներից, կուսակալներից, ինչպես և պարսիկներից, ելիմացիներից, բաբելացիներից ու արաբներից, որոնք թագավորի ու մեծ զորապետի հրամանով եկել էին նրա հետ՝ պատերազմ վարելու, և նրանց հանեց Գուրգենի դեմ, որպեսզի ուր էլ լինի, բերեն նրան իր մոտ, լիներ այդ ստապատիր ձևով, խորամանկ կեղծավորությամբ, խարդախությամբ կամ պատերազմով և մեծամեծ զորությամբ, ամենայն պատրաստությամբ, արքունի զորությամբ, ինչպես որ կարող են, հասցնեն իր մոտ:*

*Իսկ [Գուրգենն] անցավ Որսիրանք գավառը: Նրա հետ էր ազատների, մեծամեծների, Արծրունյաց նախարարության և նրանց ողջ զորքի բազմությունը: Բանակեցին Թով գյուղի եռևում, լեռան վրա, նրա հովտում, որ կոչվում է Արյան լիճ, քանզի այնտեղ կա մի մեծ լիճ, մոտիկ այն տեղին, որը Վասպուրականի մեր քաջ իշխանների*

*գործի արիությունների ու ճակատամարտերի ասպարեզն էր: Այնտեղ էր հավաքվել գաղթականների մեծաթիվ բազմություն՝ Աղբակ, Զարեհավան և Ակե գավառներից, Աղզո լեռնակողմերից, Առնո ոտնից, Ջողա լեռան և ավելի այն կողմերից: Անհուն բազմությունը պատել էր լեռան չուրջը, ինչպես մարախը և ծովի ավազն անթիվ: Ապավինել էին քաջ զորավար Գուրգենին և նրա հետ եղած հայոց զորքին, իբրև մեծ ու ապահով ամրոցի: Նա իր մորը՝ Վասպուրականի բամբիշին առաքեց Բուղա զորապետի մոտ, որպեսզի այնուհետև ունենան խաղաղություն ինքն ու իր աշխարհը, և [Բուղան] իր ձեռքը տա Վասպուրականի իշխանությունը, իր եղբոր փոխարեն: Իսկ ինքն ու բոլոր յուրայինները հնազանդ կլինեն արքունիքին, սովորականի պես կտան արքունի հարկն ու տուրքը:*

*Իսկ երբ տիկինը մտավ զորակայան ու եկավ զորապետի առջև, խոսեց նրա հետ ըստ պատշաճի այն մասին, ինչ պետք էր: Զորապետը հանդարտությամբ տվեց նրան պատասխան, ասելով. «Նստիր դու այստեղ, մինչև կարձակեմ քեզ և կկատարեմ քո խնդրանքը, որի համար եկել ես»: Եվ հրամայեց պահել նրան ազատ, սահմանեց նրան ամենօրյա ռոճիկ, ըստ արժանվույն մեծ տիկնոջ՝ հոփիսիմեի: Իսկ [արաբների] զորքը, որ եկել էր Գուրգենի ետևից, եկավ հասավ երկրի սահմաններին, ուր էր Գուրգենն իր զորքով: [Նրանք] բանակեցին Զավ կոչված գետի եզերքին:*

*Այնժամ, երբ հայոց զորավարն իմացավ որ ոչ մի բանով չի կարող համաձայնեցնել նրանց, մանավանդ, որ միակամ հրաման տվեցին [արաբացոց] զորքին՝ լինել պատերազմի, ուստի Գուրգենն իր զորագնդին հրամայեց պատրաստվել պատերազմի, կազմել մարտաշարքեր և կռվել այլազգիների դեմ: Իսկ ինքը բարձրացրեց ձեռքերը դեպի երկինք, հորդ արտասուքներով աղոթեց, ասաց երեսուն ու չորրորդ և ութսուներկուերորդ սաղմոսները: Եվ ահա այլազգիները մոտեցան մարտի մեջ մտնելու, իսկ զորագլուխները փութացին զորքի հետ: Հայոց զորագունդը չարժվեց նրանց դեմ՝ վիմաձև, միմյանցից անքակ և ըստ ազգատոհմերի: Ինքը՝ Գուրգեն զորավարը գլխավորեց ճակատի ձախակողմը, որպեսզի թիկունք լինի հետևակազոր մարտակիցների զորագնդին, իսկ աջ թևը տվեց Ապումկդեմին: Մյուսները մեկմեկու ետևից կանգնեցին մարտակարգում: Աղոթողները պաղատանքներ հղեցին տիրոջը, եկեղեցու սպասավորներն ուժեղացրեցին օրհնությունները, քահանաները վեր բարձրացրին Սուրբ Ավետարանը և իրենց նշան կանգնեցրին Սուրբ Խաչը: Ապա եկեղեցու սպասավորները կատարեցին տերունական կանոնը, իսկ երաժիշտները*

*երգեցին փարավոնին հաղթելու երգը, գոչելով «Տերը կխորտակի պատերազմները, Տեր է նրա անունը»[7]: Մյուսները տխրաձայն երգեցին հնոցի օրհնությունը, ի վերուստ զորավիգ կանչեցին Աստծո հրեշտակին: Եվ ռամիկների ամբոխից ոմանք մի կողմից քարերով ձեռնամուխ եղան պատերազմին:*

*Ապա խիտ շարքերով, հանդուգն հարձակմամբ դիմեցին առաջ, բախվեցին զորագնդին, ճեղքեցին ճակատը ու ետ դարձրին այլազգիներին: Գոչում էին վիշապաձայն, պատառոտում առյուծաբար, խոցում ինչպես վարազը և մատնում էին մահվան ու պարտության: Յուրաքանչյուր տղամարդ գետին էր գցում իր ախոյանին և նետվում մյուսի ետևից: Բազմակուտակ նիզակների սաստիկ բախումից, զենքերի փայլից, սրերի շողշողալուց և լարված աղեղների սուլոցից կայծակ էր դուրս ցայտում, ինչպես ամպի որոտից, և թվում էր, թե լեռն այրվում է հրից: Պատերազմը երկարեց մինչև օրվա տասներորդ ժամը. այլազգիներին հասցրեցին մեծամեծ հարվածներ: Սպանվածների թիվը 1800 էր, բացի բազում վիրավորները, ավարն ու ձերբակալվածները: Պատերազմին միջամուխ էին նաև քահանաները, որոնք գաղթական բազմության մեջ էին: Քանզի հոգևոր էր պատերազմը և ոչ մարմնավոր, պատերազմում էին սուրբ եկեղեցու և Աստծո ժողովրդի համար: Ջարդեցին, հալածեցին և ի փախուստ դարձրին զորքին: [Հայոց զորագնդի] կեսը հետամտեց փախչողներին, մինչև գիշերվա մթության թանձրանալը, դուրս հանեցին Հայոց սահմաններից ոմանց Ելիի, ոմանց՝ Ատրպատականի ու Պարսից կողմերը:*

***Գլ. Ե.*** *Այնուհետև [արաբացոց] զորագլուխներն ընկան տարակուսական մտքերի մեջ՝ հայոց զորագնդից իրենց զորքի կրած հարվածների պատճառով: Գրել և իմաց տալ գլխավոր զորապետին չէին համարձակվում, ծածկել, թաքցնել չէին կարող, լռությամբ ու կեղծիքով ի վիճակի չէին հաճոյանալ զորապետին: Հանձն չէին առնում հայտնել, ներկայացնել սպանվածների թվի մասին, և այն, թե սոսկ 900 տղամարդ զորեղ ձեռքերով հաղթեցին 15.000-ին: Որովհետև ստուգեցին և իմացան, որ ամեն մի [հայ] տղամարդուց ընկել էին իրենց երկուսը, բացի վիրավորները, ավարն ու գերեվարվածները: Հարկ եղավ ակամայից մեկ առ մեկ պատմել [զորապետին] կատարվածի մասին: Եվ զորապետի հանդեպ երկյուղից ու վատ կասկածից մեջտեղ բերեցին տեսիլքը և աստծո հրեշտակը, որ երևաց երկնից: Դրանով մի փոքր ցածրացրին [զայրույթի] լեռնացած ալիքները, հանդարտեցրին մրրկալից կոհակները և բռնավորի գազանությունը վերածեցին ընտանության: Ապա հրաման տվեց ամբողջ երկրին, որ յուրաքանչյուր*

*ոք վերադառնա իր երկիրը և տիրի իր ժառանգությանը, բնակվի խաղաղությամբ, ապրի ըստ իր կամքի, ոչ ոք չհալածվի իր բնակության տեղից և չապրի օտար երկրում պանդխտությամբ։ Այս հրամանպատվիրանը տվեցին ի օժանդակություն իրենց խաբեության, որով ձեռք բերեցին [կամեցածը] և մոլորեցրին [հայերին]։*

*Այնուհետև [Բուղան] դարձյալ ուղարկեց Համդոյին՝ պարսից ամիրային, արքունի զորապետներից ազգով թուրք Հեթումին և նրանց հետ 10.000 հեծյալներ, որոնք սպառազինված էին ավելի լավ, քան նախորդները։ Ապա գրեցին մի թուղթ, կնքեցին խորամանկությամբ, կեղծավորությամբ ու խարդախությամբ, ըստ Իսմայելի որդիների հնարագիտության։ Եվ մտան այնտեղ, ուր բանակել էր հայոց զորքը։ Թուղթն ուղարկեցին [Գուրգենին]։ Այն լի էր սատանայական հնարների թույնով, իբրև կապարճ, որ լի է թունավոր նետերով՝ աղեղից ծածկաբար դեպի նպատակը թռցնելու համար։*

*Իսկ [Գուրգենն] ընթերցեց նամակը, ուր գրված էր երդում՝ ի խայտառակություն նրանց կանանց և մոլար մարգարեի։ Հանձն էր առնում տալ նրան իրենց ընիկ տերության իշխանությունը։ [Երդվում էր] իրենց Մուհամմեդով։ [Գուրգենը] ելավ գնաց փառքի և իշխանասիրության ցանկության ետևից, որով և սխալվեց։*

*Երբ նա մոտեցավ բանակին,, իրեն ընդառաջ հանեցին զորագնդեր, իսկ երբ մտավ Բուղա զորապետի մոտ, սա հոգ չտանելով զորքի կրած վնասների ու ջարդվելու մասին, չամբաստանեց իշխանին, որպես ապստամբի։ Նույնիսկ նրա առջև փողփողում էին դրոշներն ու նշանակները, գլխին դրեցին իշխանական թագ և հագցրին արքունական չքազգեստ։ Սուրը կապեցին մեջքին, նստեցրին մեծազարդ ջորու վրա և նժույգներ [կանգնեցրին] առջևից ու ետևից՝ սպառազինված զենքով ու զարդարանքով։ Փողերի ձայնը, թմբուկների դոփյունը և երաժշտական այլ գործիքների ձայները հնչեցին չորս կողմը։ Այս ու այնտեղ սպառազեն զինվորների բազմությունն էր. մահակավորները, սակրավորները այս ու այն կողմ էին քշում վրա վազող ամբոխին։ Մունետիկը աղաղակում էր, թե՝ «Գուրգենը Վասպուրականի իշխանությունն առավ իր ձեռքը և իր եղբոր՝ Աշոտի փոխարեն, տիրում է նրան»։*

*Իսկ երեք օր անցնելուց հետո մի թուղթ ուղարկեցին Գուրգենին, գրված Բուղայից՝ լի դառնությամբ և կնքված արքայի մատանիով, իբրև թե այն եկել էր արքունուստ՝ թագավորից։ Թղթի պատճենը, որ կեղծեցին և տվեցին նրան այս էր.*

*«Բուղա, գլուխ զորապետաց արաբների ընդհանուր թագավորու-*

*թյան. Ջափրը, որ իշխում է ծովին ու ցամաքին, հավասար է մեր մարգարե Մուհամմեդին, հավատարիմ միջնորդ է աստծո և մարդկանց [միջև] և հարավային թագավորության բոլոր ժողովուրդների արքան է, որի ձեռքերում են հաստատված մահն ու կյանքը, հղեցի քեզ ելնել Հայոց երկրի բոլոր բնակիչների դեմ: Քո ձեռքը տվեցի իմ զորքը, իմ մեծամեծ զորագլուխներով հանդերձ և բազմաթիվ ժողովուրդների, որոնք նվաճվել են իմ ձեռքով, թագավորազններով, որպեսզի Աշոտին և իր եղբայրներին փութով մեզ մոտ հասցնես: Դու, ահավասիկ, մտար Հայոց երկիրը, անցար իմ թշնամիների կողմը և ապստամբներին միաբանեցիր քեզ հետ, քանզի հապաղեցիր իմ հրամանների մեջ: Արդ, այս նամակը հասնելուն պես փութով Գուրգենին և իր ազգատոհմին, Վասպուրականի ազատներով հանդերձ, կապկըպված մեզ մոտ կհասցնես: Ապա թե ոչ՝ կքննեմ քո արարքը»:*

*Ապա տվեցին կարծեցյալ թուղթը, իբրև արքայից ուղարկված. «Ընթերցիր այդ,— ասաց,— մեղադրանքի տակ մի գցիր ինձ և մի կարծիր, թե նենգությամբ եմ վարվում քեզ հետ, վնաս եմ տալիս և չեմ պահում մեր երդումը. ինքդ տես և իմացիր, որ ես մեղք չունեմ դրա մեջ և ոչ էլ կարողություն՝ արձակելու քեզ»:*

*Այնժամ նրա ոտքերը դրեցին երկաթե կապանքների մեջ: Նրա հետ էր նաև իշխան Գրիգոր Արծրունին, որը և նահատակվեց թագավորի առջև, հանուն Քրիստոսի բարելավ դավանության: Ապա դրեցին ուղտերի վրա և չարժեցին դեպի Սամառա, տարան գցեցին արքունի բանտը, որտեղ էր Աշոտ իշխանը և այլ նախարարներ՝ Արծրունյաց տոհմից:*

*Նույն ժամանակ, երբ [Հռիփսիմե] տիկինը տեսավ, որ իր որդիներին վարեցին գերության, ինքը նույնպես գնաց նրանց ետևից, մազերը փետելով, օձիքը պատռելով, լաց ու կոծով...*

*Այնժամ Հայոց բոլոր նախարարներն սկսեցին ցրվել հեռանալ միմյանցից: Գնացին և գրավեցին անմատույց տեղերը, ոմանք փութացին մտնել Վասպուրականի ամրոցներն ու բերդերը: Իսկ զորքը քայքայվեց և ցրվեց երկրի երեսով մեկ:*

*Այնժամ, երբ [Բուղա] զորապետն իմացավ, որ ամեն ինչ հաջողվեց ըստ իր կամքի ու անօրեն թագավորի հրամանի, և գլուխ եկավ նրանց չար մտադրությունը, որ խորհել էին Վասպուրական աշխարհի իշխանության նկատմամբ և վերջ տվեց բոլոր զորավոր տղամարդկանց, ո՛չ ոք չկար այնուհետև, որ կարողանար իր սահմաններում փակել նրա առաջը: Այնուհետև սկսեցին առանց երկյուղի համարձակությամբ սփռվել տարածվել երկրի երեսին արաբների բոլոր*

*ցեղերը, որ եկել էին նրա ետևից՝ իրենց ընտանիքներով: Եվ ձեռնամուխ եղան բաժանելու երկիրը իրենց միջև: Վիճակ էին գցում, լարեր ձգում սահմանների վրա և բնակվում էին երկրի ամրոցներում առանց վախենալու: Մինչևիսկ որտեղից մի փոքր կասկած ունեին, այնտեղ նույնպես հաստատվեցին, առանց երկյուղի: Եվ մեծ նեղություն էր ամբողջ երկրում, որպիսին չի եղել ի սկզբանե աշխարհի և այլես չի լինելու: Ավերակներ դարձան գյուղերը, ագարակները և ավանները, զրկվեցին զարդարանքից ու վայելչությունից:*

*Եվ [Բուղան] հրաման տվեց այնուհետև, որպեսզի գերիների բազմությունը վաճառքի հանեն այլևայլ ցեղերի ու ժողովուրդների մեջ, ում որ դուր կգան: Իսկ ինքը ելավ գնաց Դվին քաղաքը, այնտեղ պատրաստեց իրեն ձմեռոց, մինչև գարնանային ժամանակը, ունենալով իր հետ բազում կապյալներ: Մեր երկիրն ավերվել էր իր ելումուտի ժամանակ:*

***Գլ. Ժ.*** *Արդեն մոտենում էր [Բուղայի] գալստյան երկրորդ տարին, երբ ելավ գնաց Աղվանից կողմերը: Այն ժամանակ Աղվանքի մեծ մասին տիրում էր ոմն Ապումուսե, որը հայտնի էր որպես կարդացող և ճանաչվում էր երեցի որդի: Իսկ երբ լսեց, թե ահա Բուղան վերցրած իր զորքը, գալիս է իր վրա, հրաման տվեց իր ողջ երկրին՝ ելնել բռնել լեռնակողմերը, ջանք թափել ուժեղությամբ և արիասրտությամբ դիմադրել, մանավանդ տեսավ, որ ծանրներից նա պարտության է մատնվել ու հաղթվել: «Մենք,– ասում է,– ծանրներից վախկոտ չպիտի լինենք, քանզի նրանցից ավելի հզոր և ավելի բարձր ամրոցներ ունենք, և մեր կիրճերում ավելի դյուրությամբ կփակենք նրանց: Միայն սրտանց միաբան պիտի մնանք, ապավինենք Աստծո օգնությանը: Եվ եթե մեկին մահ հասնի, պարծանք կհամարվի իր անձի, իր տոհմի համար և՝ Քրիստոսից կընդունի մարտիրոսության պսակ, որովհետև ոչ թե ամենքի համար սահմանված մահով, այլ Սուրբ եկեղեցու և Աստծո ժողովրդի համար [կմեռնի]»: Աղվանից աստվածասեր իշխանն այսպիսի և սրանից էլ առավել խոսքեր ասաց իր զորքի առջև:*

*Իսկ Բուղան վերցրեց իր զորքի բազմությունը և իջավ Գարգարացվոց դաշտը և գնաց մտավ Պարտավ մեծ քաղաքը: Սկսեց գոռալ, մտադրվեց չարության թույնը թափել Աղվանից իշխանի վրա: [Մարդիկ] ուղարկեց նրա մոտ, հորդորելով ի հնազանդություն: Բայց նա տեղի չտվեց նրա խոսքերին, քանզի լավ գիտեր նրա խաբեբա բնավորությունը: Ապա հավաքեց երկրի ամբողջ բնակչությանը՝ կա-*

*նանց, երեխաներին և Աղվանից երկրից ուրիշների՝ ռամիկների, չինականների բազմությանը, սակավաթիվ զորականների լեգեոնները լեռան վրա՝ Քթիչ անվանված ամրոցում, ըստ այնմ՝ նաև մթերապաշար: Իսկ Բուղան, իմանալով, թե որպիսի պատրաստություն է տեսել Աղվանից իշխանը, տարակուսեց իր մտքում: Եվ որովհետև բազմիցս պատերազմեց պես-պես մարտերով և ոչնչով չկարողացավ վնասել անպարտելի ամրոցներին, նրանց մեջ եղած տղամարդկանց քաջությանը, ողոքական խոսքերով կոչ արեց հպատակվել: Իսկ [Ապումուսեն] տվեց այսպիսի պատասխան. «Աշխարհակալների սովորությունն է արքունի հոգածությամբ գնալ երկիրը, իբրև հնազանդների մոտ, վերացնել, թեթևացնել տառապյալների նեղությունները, իբրև խնամարկուներ, և ոչ թե ավազակաբար, սրով ու գերեվարությամբ ավերակ դարձնել [երկիրը]: Եվ եթե դու խաղաղության հսկող էիր եկել արքունիքից, չենություն պիտի պարգևեիր սրանց և ոչ թե ավերանք ու խառնակություն: Եվ արդ թող հայտնի լինի, որ ինչքան բավականանա իմ զորությունը և քանի դեռ կենդանի եմ, կրնդդիմակայեմ Տեր Աստծո ուժով ու զորությամբ և քեզ տեսնելու եմ ոչ թե սիրով ու խաղաղությամբ, այլ զենքով, աղեղով ու սրով, քաջ տղամարդկանցով և ընտիր երիվարներով: Եվ եթե դու ցանկանում ես ապրեցնել քեզ և քո զորքը, արի ել այստեղից և գնա իմ [երկրի] սահմաններից: Ապա թե ջանաս զրկվել այս կյանքից՝ քո գայրույթից ու կատաղության պատճառով և ոսկորներդ ցրես անապատներում ու դառնաս երկրի գազանների, երկնքի թռչունների կերակուր, քո կամքը թող լինի, ես անպարտ եմ քո արյան համար, մանավանդ որ մեծ բարեպաշտություն եմ համարում սպանել Աստծո թշնամիներին, ինչպես Մովսեսն Ամաղեկին, Հեսուն Քանանացիներին, Սամուելն Ագագին և Դավիթը Գողիաթին, ինչպես նաև իսրայելացիներն այլազգիներին: Եվ աստված սիրեց նրանց: Նույն կերպ կանեմ քեզ և քո զորքի հետ: Արդ չեմ կամենում խոսել քեզ հետ. քո ձեռքերում է խաղաղությունն ու խառնակությունը: Եթե, ինչպես ասացի, հեռանաս ինձանից, խաղաղություն կլինի, իսկ եթե ոչ՝ պատերազմ, կռիվ ու ճակատամարտ: Դու [կդառնաս] թիրախ, իսկ իմ աղեղը՝ խոցոտող, դու՝ ախոյան, իմ զինվորները՝ հաղթանակող, դու՝ ոսոխ, իսկ իմ զորքը քեզ դատապարտող, քո պատերազմը, մեր հաղթությունը, քո մարմինը և իմ նիզակը, քո պարանոցը և իմ սուրը, քո ստացվածքը՝ մենք նրա ժառանգորդ, քո ավարը՝ մենք ավարառուներ, դու ավազակ՝ մենք կողոպտիչներ, դու եղեգն, մենք դյուրավառ կրակ, դու հարդ, իսկ մենք դյուրությամբ փչող քամի, դու ծաղիկ, իսկ մենք թարշա-*

*մեցնող խորշակ, դու պտղալից հանդ, մենք ապականող կարկուտ, դու չինվածք առանց հիման, իսկ ես հիմնիվեր տապալող հեղեղ, դու լեռ, իմ զորքը հոշոտող գազան, որ պատառոտում է քո սրտի առագաստը, դու խաղալիք, իսկ մենք մանուկներ, որ բռնելով քո զորությունը, խաղում, կատակում ենք քեզ հետ և քո հպարտության ու անբարեհաճության հետ. դու վայրի երե, մենք՝ որսորդներ, դու թռչուն, իսկ մենք բարձրությունից ցած ենք իջեցնում և ձգում որոգայթի մեջ. դու ծովի վիշապ, մենք՝ կարթ, քո քիմքից վեր ենք ձգում քեզ անդունդների խորքից. դու իբրև եղջերու առանց եղջյուրների, մենք արծիվներ քո վերևում, քո աչքերը կուրացնողներ, որ քո լեշը գցում ենք իմ ձագերին և ծակերում բնակվող աղվեսներին: Եվ ահա դարձյալ եմ ասում. անհաստատ է քո ունեցածը: Եվ որպեսզի քեզ վրա չվերցնես այն, ինչ խոսեցի քո պատգամավորների հետ, ավելի քան կջանաս վտանգել մեզ՝ դու կընդունես վտանգավորը»:*

*Այնժամ երբ բռնավորը լսեց պատասխանի այս խոսքերը՝ լի զորությամբ ու մեծ անարգանքով, լցվեց խորը տարակուսանքով, մեծապես ապշեց, և իր բոլոր դիտավորությունները ապականվեցին ու ցրվեցին. չգիտեր ինչ անել: Ապա բազում անգամ մտքներում քննեցին և բազմապիսի հնարներից ընտրեցին [մեկը]՝ գրել և ծանուցել թագավորին այդ մարդու մասին: Եվ ուղարկեցին արքայի մոտ լրատարներ, իսկ իրենք մնացին լեռան շուրջը, մինչև որ արքունուստ փութով մի հրաման կգար իրենց:*

*Իսկ Ապումուսեն զինավառված, իր ամբողջ զորությամբ չարժվեց իջավ նրանց վրա ու հասցրեց մեծամեծ հարվածներ, վերցրեց բազում ավար և վերադարձավ իր բանակատեղը:*

*Սրանից հետո, որ այլազգիների երկրորդ հարվածն էր, [Բուղան] դարձյալ հրաման տվեց ելնել պատերազմի, և հետամտելով հասան նրանց: Բայց ահա աղվանից 1000 ընտրովի տղամարդիկ պատահեցին նրանց, ջարդեցին և ի փախուստ դարձրին դեպի բանակը, իսկ իրենցից ոչ ոք չվիրավորվեց և ողջանդամ հասան իրենց զորապետի մոտ, մեծ հաղթությամբ և բազում ավարով:*

*Նույն ժամանակ արքունուստ հրաման հասավ՝ «չտաղտկանալ և չվհատվել և չդադարել նրա դեմ պատերազմելուց, մինչև որ ակամայից իսկ հնազանդության կգա արքային»:*

*Այնժամ հրաման տվեցին ամբողջ զորքին ելնել պատերազմի: Եվ ահա աղաղակ, փողեր, քնարներ, անհամար զորքերը սպառազինվեցին զենքով, սրերով և ամեն տեսակ պատրաստությամբ, ու քիչ մնաց հիմքից տապալվեր լեռը: Զորքը բարձրացավ մինչև լեռան գլուխը,*

*նրա հետ նաև բազում դրոշներ՝ ձիերին նստած 1000 ընտրյալ քաջ տղամարդկանց [ձեռքին]: Եվ գրեթե ոչ մի տեղ, աշխարհի չորս կողմերում ոչ մի թագավորի մոտ չէր երևացել այդպիսի ահավոր տեսքով ու սպառազինությամբ զորք՝ սաստիկ որոտումով և ճայթյունով, զենքերի փայլատակումով և ինչով այն ժամանակ զինվել, զարդարվել ու հանդերձավորվել էր արաբացոց զորքը: Եվ գունդ առ գունդ, փութապես ելան մեկը մյուսի ետևից և ամեն ոք, որ տեսնում էր, մեծ երկյուղով ներս էր մտնում [տուն]:*

*Եվ երբ զորքի ամբողջ բազմությունը, ավելի քան 200 հազար, հավաքվեց միևնույն տեղում, կազմվեցին մարտաշարքեր և հարդարեցին ճակատ, միմյանց ձայնեցին հարձակվել թշնամու վրա: Եվ ահա Ապումուսեն, որ ճանաչվում էր երեցի որդի, ելավ նրանց դեմ պատերազմի, մտավ նրանց հետ մրցահանդեսի մեջ: Դարձան իբրև երկաթի մի մեծ բլուր կամ ադամանդյա վեմ և իրար շուրջ խռնվելով՝ կպան միմյանց, ինչպես մեկ մարդ: Իսկ արաբացոց զորքը սրտապնդվեց և ներսից շրջափակեց աղվանից զորագունդը և դիմեց հանդգնաբար նրանց վրա, որոնք սակայն մնացին անշարժ, առաջ չընկան մեկ մեկուց: Եվ մինչ [արաբները] կարծում էին, թե մատնվեցին իրենց ձեռքը, սակայն նրանք աղոթում էին և աստծուն կանչում իրենց օգնության: Ապա դիմեցին նրանց վրա՝ չորս մասով՝ Քրիստոսի խաչի նմանությամբ: Հարվածեցին ճակատից, ճեղքեցին մարտաշարքերը և նրանց դարձրին դեպի դաշտավայր, իջեցրին լեռան վրայից: [Թշնամին] կրեց մեծամեծ հարվածներ, ինչպես քամուց հարդն է քշվում, կամ ծուխը՝ մրրկից, և այդպես կորան գնացին աղվանից զորքի շնորհիվ, որոնք վերադարձան և հավաքեցին ավար, որին թիվ չկար: Բայց ինչո՞ւ պիտի մեկ-մեկ, հականե հանվանե նկարագրեմ նրանց կռիվները: Կպատմեմ կարճառոտ և կհամառոտեմ խոսքս: Սրանց պատերազմը երկարեց մոտ մեկ տարի, և ոչ մի ճակատամարտում Ապումուսեն երեսը չդարձրեց Բուղայից: Եվ ինչպես պատմվում է, նրանց պատերազմների թիվը հասավ 28-ի, և արքունի զորքը ջարդվեց այսքան կռիվներ մղելուց:*

*1. Այսինքն՝ 850 թվականին:*

*2. Խոսքը Հայոց իշխան Բագարատ Բագրատունու (826-851) մասին է:*

*3. Աշոտ Արծրունին Բագարատ Բագրատունու քրոջ՝ Հռիփսիմեի որդին էր:*

*4. Խոսքը վերաբերում է Բագարատ և Հռիփսիմե Բագրատունիների քրոջը, որը Աղձնիքի ամիրա Մուսա իբն Զուրարայի կինն էր:*

*5. Նույն Յուսուփ զորավարն է, Արմինիայի կառավարիչը (850-851):*

*6. Խոսքը Մուշ քաղաքի մասին է:*

*7. Տե՛ս **Ելից.**, ԺԵ, 3:*

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑԻՆ 850-855 ԹԹ. ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### *ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ, էջ 121-131*

*Դրանից հետո Ջաֆր ամիրապետի կողմից առաքվում է Աբուսեթ անունով մի ոստիկան, որը չարժվում գալիս է Հայաստան: Երբ նա հասնում է Տարոն գավառը, խսկույն շղթայակապ անելով Բագարատ իշխանին, տանել է տալիս ամիրապետի մոտ[1]: Բայց Տավրոս լեռան[2] բնակիչներն իրենց խառնակ բնավորության պատճառով հավաքվելով մի վայրում, սպառազինվելով ու գայթակղվելով, խմբովին հանկարծակի հարձակվում են նրա վրա և սպանում ոստիկան Աբուսեթին՝ լուծելով Բագարատ իշխանի վրեժը: Եվ ապա նրա [Աբուսեթի] զորքի սպաները, ցանուցիր սփռվելով, գնում են ամիրապետի մոտ՝ գուժելու դեպքի աղետների մասին:*

*Բայց ամիրապետը, իմանալով Աբուսեթի սպանության մասին, զորք է գումարում, գունդ կազմում, հեծելազոր պատրաստում և տալով Բուղա անունով իր մի ընդոծնի ձեռքը[3], ուղարկում է Հայաստան: Եվ ապա որոշակի հրաման է տալիս՝ բռնել երկրի բոլոր իշխաններին ու տերերին, շղթայակապ անել և բոլորին իր մոտ տանել, իսկ ռամիկ հեծելազորին, որի [զինվորները] կարող էին ազդրերին սուր կրել կամ զենք չարժել, բոլորին կոտորել: Միայն թե նրանցից լավագույն մարդկանց, ովքեր կընդունեն Մահմեդի կրոնը, իր հետ տանել: Եվ նա մեծ զորքով գալիս հասնում է Տարոն գավառը՝ կայծակի նման չանթահար անելով աշխարհը: Բուղայի և նրա ազգակիցների կողմից անմիջապես բռնվում են և ձերբակալված Բագարատի որդիները՝ Աշոտն ու Դավիթը: Կարճ ժամանակով նրանց բանտարկելով՝ [Բուղան] իր զորքով ասպատակություն է սփռում Տորոս լեռան ծործորներում ու ամբողջ գավառում: Եվ լեռան ջրոտ տեղերում նախապես բնակվածներից ում բռնում էին, անողորմ սրով գետին էին փռում, իսկ գավառի ռամիկ հեծելազնդից ոմանց սրի էին քաշում, ոմանց ձերբակալելով ու պարանով քարշ տալով՝ հասցնում էին բռնակալի մոտ: Լավերին, քաջաբար դիմադրողներին և առողջ գույն ունեցողներին մյուսներից հեռացնում էին՝ ամիրապետի հրամանի համաձայն իրենց անօրեն կրոնի կողմը դարձնելու համար, իսկ մնացածներին հրամայում էր սրով սպանել: Եվ այդպես շրջելով գավառից գավառ՝ շատ օրեր էր սպասում, մինչև որ իշխան Աշոտին ու նրա եղբայր Դավթին իրենց հարազատների հետ միասին ուղարկում է ամիրապետի մոտ: Հետո այնտեղից չարժվում, գնում է Վասպուրականի կողմերը: Իսկ Արծրունյաց տան մեծ իշխանը՝ Աշոտը, թեպետև պատրաստվում էր զինված յուրայինների հետ մարտնչել Բուղայի դեմ, սակայն նա-*

*խարարները պատերազմի հարցում համամիտ չէին նրա հետ: Այնու-հետև նա [Աշոտը] ստիպված գնում է Բուղայի մոտ: Իսկույն նրան ու նրա ազգակիցներին բռնելով՝ Բուղան մի քանի օր նրանց պահում է բանտում, իսկ հետո կանանց ու որդիների հետ միասին ուղարկում է ամիրապետի մոտ: Այնուհետև գավառներն իր ձեռքի տակ գցելով՝ հրամայում է կռվող ամեն մի մարդու, ով սուր էր վերցրել կամ զենք շարժել, ձերբակալել և իր մոտ տանել: Նա այնտեղ էլ վարվում է Տա-րոնի կողմերի օրինակով, [այն է]՝ չափահասներին ու հաջողակներին առանձնացնում է իրենց պաշտամունքին դարձնելու համար, իսկ մյուսներին սրի ճարակ էին դարձնում՝ նրանց արյամբ լցնելով բոլոր փոսերը: Եվ ինքը նույն ավազակային ասպատակությամբ գնում հասնում է Դվին մայրաքաղաքի կողմերը: Իսկ Հայոց մեծ սպարա-պետ Սմբատը, երբ տեսավ նրա կողմից կատարված ցնցումներն ու սպանիչ սրի կոտորածները, որ հասան այն ժողովուրդներին, մահն աչքն առած իր աշխարհի փրկության համար գնում է նրան ընդառաջ բազում ընծաներով ու պարգևներով: Բուղան նախ մեծարանքով ըն-դունում է նրա ընծաները, և ապա նրա ցանկությամբ նրան առաջ-նորդում է ու ճանապարհ հարթում ամեն տեղ, ուր նա կցանկանար գնալ: Եվ մեծ իմաստությամբ նրա խոտոր ու սնոտի մտքերը իրեն են-թարկելով՝ բռնակալը նրա մեջ այնպիսի վստահություն է առաջաց-նում, որ մեծ սպարապետին դարձնում է իր կամակիցն ու խորհրդա-կանը: Եվ նրանք միասին գնում մտնում են Դվին քաղաքը, և այնտեղ ևս ասպատակելով՝ շրջակա գավառները ենթարկում են իրենց:*

*Բայց բռնակալ Բուղան, երբ տեսավ, որ ամեն ինչ հաջողվեց իր կամքով, ապա զորք է ուղարկում Սիսական իշխան Վասակի, նրա եղբայր Աշոտի և նրանց աշխարհի այլ տերերի վրա, որպեսզի նրանց բռնեն ու շտապ իր մոտ հասցնեն: Բայց կուսակալ տերերից շատերը գնում հավաքվում են Բաղաց անառիկ ամրոցում և ազատվում իրենց նեղողների ձեռքից: Իսկ Վասակ իշխանը, նրանցից հազիվ ճողոպրե-լով, փախչում, գնում է Կոտայք գավառի կողմերը: Այդ մասին անմի-ջապես տեղյակ են պահում Բուղային, որը նրա հետևից զորք է ուղարկում՝ նրան բռնելու համար: Իսկ երբ ավազակները հետա-պնդելով հասնում են իշխանին, նա ետ է դառնում և թուրը գործա-դրելով՝ նրանց բոլորին թավագլոր է անում, ու ինքն անցնում գնում է Գարդման աշխարհի արևելյան կողմը, այդ աշխարհի Կտրիճ անու-նով իշխանի մոտ: Բայց այդ ևս Վասակ իշխանի համար թշնամուց փրկվելու տեղ չեղավ, որովհետև Գարդմանի իշխանը, խաբվելով դևից, նրան բռնում-կապում և ուղարկում-տալիս է Բուղայի ձեռքը, մտածելով, որ դրա համար նա Բուղայից լավ օգնություն կստանա: Բռնակալը նախ ընդունում է նրան, իսկ հետո [Բուղայի] ասպատա-*

*կող զորքը բռնում է նրա [Վասակի] եղբայր Աշոտին ու մեծ տիկնոջը, այսինքն՝ նրանց մորը, և շտապ կերպով հասցնում են Դվին քաղաքը, նրա մոտ:*

*Այստեղ այնուհետև Հովհաննես մեծ հայրապետը[4], որ շրջագայում էր Գեղարքունի գավառի իրեն տրված կողմերում, հասնելով իր կյանքի ավարտին, վախճանվում է Մաքենացիների կրոնական մեծ միաբանության վայրում ու թաղվում նույն սուրբ միաբանության գերեզմանոցում. նա առաջնորդությունը պահեց քսաներկու տարի:*

*Բայց բռնակալ Բուղան, իր մոտ ձերբակալվածներին ու կարճ ժամանակով բանտարկվածներին առնելով, չվում գնում է արևելյան կողմերը՝ Սմբատ սպարապետին հրաման հղելով, որ շտապ մեկնի, գնա ու հասնի իր հետևից՝ գործը գլուխ բերելու համար: Իսկ Սմբատը հրամայում է նախ Երազգավորք քաղաքագյուղում եպիսկոպոսների ժողով անել, որտեղ հայրապետ են ձեռնադրում Զաքարիային, որը Կոտայք գավառի Ձագ գյուղից էր[5], և ապա անձնատուր լինելով նրա աղոթքներին՝ [Սմբատ սպարապետը] մեկնում գնում է բռնակալ Բուղայի մոտ: Իսկ Բուղան գնում ու բռնում է Խաչենի ամրոցում բնակվող Ատրներսեհ մեծ իշխանին ու նրա ազգակիցներին: Այնտեղից նա թողնում գնում է Գարդման գավառը և պատնեշելով ու պատելով Գարդման բերդը՝ այնտեղ նա բռնում է Գարդմանի իշխանին՝ Կտրիճին, ու շղթայակապ անում: Եվ այնտեղից էլ նա գնալով Ուտի գավառը՝ Տուս գյուղում ձերբակալում է Ստեփանոսին, որին անվանում էին նաև Կոն, որի ցեղն իր նախնի Սևուկի անունով Սևորդիք էր կոչվում: Եվ ապա նենգությամբ խաբելով՝ նա բռնում է Աղվանքի իշխան Եսայուն նրա ազգակիցների հետ միասին: Նրա հետ էլ նրա ձեռքով բռնվեցին ու շղթայակապ արվեցին Աղվանից աշխարհի այլ տերեր ու իշխաններ, և այդ աշխարհում քիչ արյուն չթափվեց:*

*Այնուհետև բոլոր նրանց, որոնք շղթայակապված կամ կարճ ժամանակով ձերբակալված էին, բերում էին նրա մոտ և [Բուղան] դրանց առնելով իր հետ՝ տանում էր ամիրապետի մոտ: Նա իր հետ արքունական դուռն է տանում նաև Սմբատ սպարապետին՝ նրան հավաստիացնելով, թե նրա հավատարմության փոխարեն ամիրապետը նրան շնորհ կանի՝ տիրելու բոլոր հայաստանցիների վրա, արքունիքից ստանալու պարգև ու պատիվ և կրկին վերադառնալու իր աշխարհը: Իսկ երբ գնացին, հասան արքունի դուռը ու ներկայացան ամիրապետին, այնտեղ նրան [Սմբատ սպարապետին] էլ մյուս շղթայվածների հետ միասին գցեցին բանտ: Եվ այլևս չհիշվեցին նրա երախտիքն ու հավատարմությունը իրենց նկատմամբ:*

*1. Իրականում այդ գործողությունները վերաբերում են ոչ թե Աբուսեթին, այլ նրա որդուն՝ Յուսուֆին:*

*2. Այսինքն՝ Սասունի և Խութի լեռների:*

*3. Նկատի ունի Բուղայի թյուրքական ծագումը:*

*4. Խոսքը Հայոց կաթողիկոս Հովհաննես Դ Ովայեցու (833-855) մասին է:*

*5. Զաքարիա Ա Ձագեցին աթոռակալել է 855-876 թվականներին:*

## 850-855 ԹԹ. ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆ ԸՍՏ ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ

#### *Հանդես Բ*

***Գլ. Բ.*** *[Հայոց] իշխանների կարգն այսպես է. Աշոտի որդի Սմբատից հետո՝ նրա որդի Աշոտը, որ Մսակեր էր կոչվում՝ քսան տարի: Սա Կամսարականների տոհմից Արշարունյաց գավառը գանձագին առավ և արքունիքը Կոգովիտից Արշարունիք փոխադրեց:*

*Նրանից հետո եկավ նրա որդի Սմբատը, որն Ասպլաբաս կոչվեց, երեսուն տարի: Սա մանկուց պատանդ էր Սամառայում. արքունի դռանը, Հարուն [ալ] Ռաշիդի օրերում, սակայն (ՄՀԵ) երկու հարյուր յոթանասունհինգ թվականին ազատ արձակվելով գալիս է Հայաստան և Արշարունյաց գավառում կառուցում է մի ձեռակերտ, որն անվանում է Ագրճկույս: Սրա օրերում, (ՄՂ) երկու հարյուր իննսուն թվականին, Խալթ իբն Եզիտը Հայաստանի ամիրա եկավ և բազմությամբ անցավ Վրաստան, բայց մահացավ Ջավախքում, Խոզաբիր կոչվող գյուղում:*




***Հարուն ալ Ռաշիդ խալիֆայի դրամը (800 թ.)***

*Այս ժամանակներում, Տեր Հովհաննեսի հայրապետության և Հայոց (յ)երեք հարյուր թվականին ամիրապետ Ջաֆրը Աբուսեթ անունով մեկին ոստիկան է ուղարկում: Սա գալիս է Տարոն, ձերբակալում է Բագարատ իշխանին և ուղարկում Ջաֆրի մոտ: Բայց Տավրոս լեռան բնակիչներն ի մի հավաքվելով, խառնամբոխ բազմությամբ հարձակվում են, սպանում ոստիկանին ու նրա ամբողջ զորքին: Մնա-*

*ցածները գնում են և գույժը հասցնում Ջափրին: Նա առյուծաբար գազանացած մռնչում է և անհամար զորք հավաքում, տալիս է ընդոծին (իմա՝ որդեգիր-սպասավոր) ոմն Բուղայի ձեռքը և ուղարկում Հայաստան: Հրամայում է նրան մեր աշխարհի իշխաններին իր մոտ ուղարկել, նրանց զորքերին կոտորել, իսկ եթե որևէ մեկը Մուհամմեդի հավատն ընդունի, պատիվներ տալ և իր հետ տանել: Սա գալիս է Տարոն, կալանքի է վերցնում Բագարատի երեք որդիներին, առհասարակ կոտորում է խութեցիներին՝ Վաչգինակ կոչված լեռան վրա: Առաջ շարժվելով բռնում է հայոց բոլոր իշխաններին, նաև Արծրունյաց Աշոտ իշխանին՝ Դերենիկի հորը, Աշոտ Թագավորի հայր և հայոց սպարապետ Սմբատին, Սյունյաց Վասակ իշխանին և Գարդմանի իշխան Կորիճին, Խաչենի Ատրներսեհ իշխանին, Աղվանքի Եսայի իշխանին և Սևորդյաց Ստեփանոս իշխանին, որին Կոն էին կոչում, սա Քրիստոսից պսակն ընդունեց՝ նահատակությամբ Սամառա քաղաքի արքունի դռանը: Սրանց բոլորին և շատ ուրիշների երկաթյա կապանքներով քշեց տարավ Սամառա ու մեր ամբողջ երկիրը գերեց:*

*Ձեռք մեկնեց նաև եկեղեցուն՝ իրենց մոլար պաշտամունքին դարձնելու մտադրությամբ, ապա ընտրեց դեռահասներին ու վայելչատեսներին, բանտային խոշտանգումների ենթարկեց, [ստիպում էր] ուրանալ Քրիստոսին: Բայց նրանք քաջությամբ տարան նախատինքն ու չարչարանքը, գելարաններն ու բազում տանջանքներն, իրենց ցավերն արհամարհեցին, անսպառ կամքով դիմանում էին և մահը խնդությամբ էին ընդունում: Դրա համար կատաղած բռնավորը հրամայում է բոլորին կոտորել:*

*Եվ նույն ժամանակ [Բուղան] շարժվում գնում է Տփղիսի վրա և Իսմայիլի որդի Սահակին հանում է [խաչա]փայտին: Այնուհետև անցնելով Պարտավ, սրով նահատակում է վանանդեցի Մոկաթլին, որը մարտիրոսացավ Քրիստոսի հավատի համար ունեցած բարի խոստովանությամբ:*

*Իսկ Հովհաննեսն իր հայրապետության (ԻԵ) քսանհինգ տարին լրանալուց հետո, Հայոց (ՅԲ) երեք հարյուր երկու թվականին, փոխվում է այս աշխարհից: Եվ Սմբատ սպարապետը եպիսկոպոսներին հրամայում է հավաքվել և Զաքարիային ձեռնադրել կաթողիկոս, որը Կոտայքի գավառի Ձագ գյուղից էր. սա տիրեց (ԻԲ) քսաներկու տարի: Նա մինչև հայրապետ դառնալը քահանայության կամ սարկավագության ոչ մի աստիճան չէր ունեցել, սակայն անարատ կյանք վարելով՝ մեկ օրում (միանգամից) պատվական բոլոր աստիճաններին արժանի եղավ: Ապա սպարապետ Սմբատը Բուղայի հետ գնում է Ջափր ամիրապետի մոտ, իսկ հայոց սպարապետ է դառնում Սմբատի որդի օրհնյալ Աշոտը, որը հետագայում թագավորեց Հայաստանում:*

*Բայց Հայոց այն իշխանները, որոնք առաջ գերված էին Բուղայի կողմից, մի քանի տարի հետո յուրաքանչյուրը վերադարձավ իր երկիրը, բացի Սմբատից և Ստեփանոս Կոնից, որոնք Սամառայում նահատակվեցին Քրիստոսի խոստովանությամբ։*

*Եվ ահա, Հայոց (ՅԺԱ) հարյուր տասնմեկ թվականին Ամիր-ալմումնի նստեց Ահմատը, որ Հայոց աշխարհը հանձնեց Յահեի որդի Ալեին։ Սա Սմբատի որդի Աշոտին հաստատում է Հայոց իշխանաց իշխան, որ իշխանաց իշխան մնաց (ԻԵ) քսանհինգ տարի՝ մինչև (ՅԼՁ) երեք հարյուր երեսունվեց թվականը, և այնուհետև թագավորեց։*

### ԻԲՆ ԱԼ-ԱՍԻՐԸ 850-855 ԹԹ. ՀԱԿԱԱՐԱԲԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Արաբական հարուստ պատմական գրականության բնագավառում իրենց ուրույն տեղն ունեն Իբն ալ-Ասիրի (1160–1233) երկասիրությունները։ Նա Վերին Միջագետքի արաբներից էր, հայրը պետական բարձրաստիճան պաշտոնյա էր։ Ուսումնառությունը ստացել է Մոսուլում և Բաղդադում։***

***Հեղինակ է «Պատմություն Մոսուլի Աթաբեկների պետություն» և «Լիակատար պատմություն» երկասիրությունների։ Խալիֆաթի և նրա տիրապետության ներքո գտնվող երկրների ու ժողովուրդների պատմության ուսումնասիրության համար առանձնահատուկ նշանակություն ունի Իբն ալ-Ասիրի «Լիակատար պատմություն»-ը («Ամբողջական կամ տիեզերական պատմություն»՝ Ալ-Քամալ ֆի-լ-տարիխ)։ Սա մի բազմահատոր ժամանակագրություն է, որտեղ պատմությունը շարադրված է Արարչագործությունից մինչև հիջրայի 628 (1231) թվականը։ Այստեղ բազմահարուստ տեղեկություններ կան նաև Հայաստանի VII–XIII դարերի պատմության վերաբերյալ։***

***Այս երկասիրության Հայաստանին և հայերին վերաբերող հատվածները հայերեն է թարգմանել և հրատարակել են Ա. Ն. Տեր-Ղևոնդյանը (տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». 11. Արաբական աղբյուրներ. Բ. Իբն ալ-Ասիր, Երևան, 1981)։***

### ԼԻԱԿԱՏԱՐ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

*(15 հուլիս 850 – 4 հուլիս 851)*

### *ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ*

*Այդ տարում հանկարծակի մեռավ Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆ ալ-Մարուազին, որին տրված էր Հայաստանի և*

*Ատրպատականի կառավարչությունը[1]: Նա մի կոչիկը հագել էր և [ոտքը] մեկնել էր մյուսը հագնելու, բայց հենց այդ պահին մահացել էր[2]: Մուտավաքքիլը նրա որդուն[3] հանձնարարեց հոր վարած պատերազմը ղեկավարելու և իրավունք տվեց նահանգի հարկերը հավաքելու: Նա գնաց և երկիրը զսպեց:*



***Մուշի Ս. Առաքելոց վանքը. V դար***
***(այժմյան վիճակ)***

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈՒԹ ԹՎԱԿԱՆ

***(5 հուլիս 851 – 22 հունիս 852)***

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԻ՝ ԻՐԵՆՑ ԿԱՌԱՎԱՐՉԻ ԴԵՄ ԱՊՍՏԱՄԲԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում[4] Հայաստանի ժողովուրդն ապստամբեց իր կառավարիչ Յուսուֆ իբն Մուհամմադի դեմ և սպանեց նրան:*

*Բանն այն էր, որ Յուսուֆը երբ գնաց Հայաստան, նրան դիմավորեց մի պատրիկ, որի անունն էր Բագարատ որդի Աշոտի (Բակրաթ իբն Աշութ) և կոչվում էր պատրիկների պատրիկ (բաթրիկ ալ-բաթարիկա): Սա նրանից երաշխավորագիր (աման) խնդրեց[5]: Յուսուֆը նրան և որդուն ձերբակալեց և ուղարկեց խալիֆայի դուռը: Հայաստանի պատրիկները հավաքվեցին Աշոտի որդի Բագարատի եղբորորդու[6] մոտ և երդվեցին սպանել Յուսուֆին: Նրանց հետ համաձայնեց նաև Մուսա իբն Զուրարան[7], որը Բագարատի փեսան էր աղջկա*

*կողմից: Լուրը հասավ Յուսուֆին, որին մերձավորները զգուշացրին, որ այնտեղ չմնա, սակայն նա չլսեց նրանց:*

*Երբ ձմեռը վրա հասավ, իջավ ձյունը, նրանք (հայերը) սպասեցին, մինչև որ ձյունը նստի: Ապա եկան նրա մոտ Տարոն (Թարուն) քաղաքը[8] և պաշարեցին նրան: Նա դուրս եկավ քաղաքից, կռվեց նրանց հետ, սակայն հայերը սպանեցին նրան ու նրա զինակիցներին: Իսկ ովքեր չէին կռվում նրա հետ, ասացին նրանց՝ հագուստներդ հանեցեք և մերկ փրկվեցեք: Այդպես էլ արեցին և բոկոտն, մերկ գնացին. մեծ մասը ցրտից մեռավ և չատերի մատները պոկվեցին և [այսպես] փրկվեցին: Այս բոլորը կատարվեց Ռամադան (26 փետրվար - 26 մարտ) [ամսին]:*

*Դրանից առաջ Յուսուֆն իր մարդկանց բաժանել էր ըստ իր նահանգի չրջանների (ռուստակ) և ամեն մի ջոկատի դեմ ուղարկվեց պատրիկների մի խումբ, որոնք մեկ օրում կոտորեցին նրանց:*

*Երբ Մուտավաքքիլը լսեց այս բանը, նրանց դեմ ուղարկեց Բուղա ալ-Քաբիրին (Ավագ Բուղային)՝ Յուսուֆի արյան վրեժը լուծելու: Նա գնաց Մոսուլի ու Ջազիրայի վրայով և սկսեց [իր գործունեությունը] Արզնում, ուր Մուսա իբն Զուրարան էր, որի եղբայրներն էին Իսմայիլը, Սուլայմանը, Ահմադը, Իսան, Մուհամմադը և Հարունը: Բուղան Մուսա իբն Զուրարային ուղարկեց Մուտավաքքիլի մոտ: Ապա նա հարձակվեց Յուսուֆին սպանողների վրա և կոտորեց մոտավորապես երեսուն հազար մարդ և մեծ թվով մարդկանց գերեվարեց ու վաճառեց: Նա գնաց Աղբակ (ալ-Բակ) երկիրը, գերեվարեց Աշութ (Աշոտ) իբն Համզա (Համազասպ) Աբու-Աբբասին՝ Աղբակի տիրոջը, իսկ Աղբակը Վասպուրականի (Բուսֆուռաջան) գավառներից էր: Ապա գնաց Դվին (Դաբիլ) քաղաքը Հայաստանում, մնաց մեկ ամիս, հետո գնաց Տփղիս (Տաֆլիս) ու պաշարեց այն:*

### ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ
*(23 հունիս 852 - 11 հունիս 853)*

### ԲՈՒՂԱՅԻ՝ ՏՓՂԻՍՈՒՄ ԿԱՏԱՐԱԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Հիշեցինք Բուղայի գնալը Տփղիս և պաշարելը: Երբ Բուղան այնտեղ գնաց, ուղարկեց Զիրաք ալ-Տուրքիին, որը Կուր գետն անցավ: Սա մեծ գետ էր, որի [արևմտյան] ափին էր Տփղիս քաղաքը, իսկ Սուղդաբիլը նրա արևելյան կողմում էր: Երբ նա անցավ գետը, կանգնեց Տփղիսի հրապարակում (մայդան): Բուղան ուղարկեց նաև քրիստոնյա Աբու-լ-Աբբաս ալ-Վարիսիին[9] Հայաստանի ժողովրդին՝ նրա*

*արաբներին և օտարներին (աջամ)։ [Ջիրաքը] եկավ Տփղիս Բաբ ալ-Ռաբաղի կողմից։ Իսհակ իբն Իսմայիլը՝ Օմայանների մաուլան, Տփղիսից դուրս եկավ Ջիրաքի դեմ և հանդիպեց նրան հրապարակի մոտ։ Բուղան կանգնած էր մի բարձր բլրի վրա և դիտում էր Ջիրաքի և Աբու-լ-Աբբասի գործողությունները։ Բուղան կանչեց նավթաձիգներին, որոնք կրակի տվեցին քաղաքը, հրկիզեցին այն, քանզի կառուցված էր սոճու փայտից։ Իսհակ իբն Իսմայիլը եկավ քաղաք և տեսավ, որ կրակը վառել էր իր պալատը և շրջապատել հարճերին։ Եկան թուրքերը և մաղրիբցիները և գերի վերցրին նրան ու որդուն՝ Օմարին և երկուսին էլ բերեցին Բուղայի մոտ։ Նա հրամայեց Իսհակի վիզը կտրել, իսկ մարմինը խաչ հանել Կուր գետի վրա։ Սա մի գեր ծերունի էր խոշոր գլխով, շիլ աչքերով։ Քաղաքում վառվեց մոտավորապես հիսուն հազար մարդ, իսկ ով կրակից ազատվեց, գերի տարվեց և մեռյալներն էլ կողոպտվեցին։ Տարան նաև Իսհակի ընտանիքը և նրա հրդեհից հետո մնացած ամբողջ ունեցվածքը Սուղդաբիլում։ Սա մի ամրացված քաղաք էր Տփղիսի դիմացը, որը կառուցել էր Խոսրով (Քիսրա) Անուշիրուանը, իսկ Իսհակն ամրացրել էր այն և այնտեղ պահել իր ունեցվածքն, ինչպես և կնոջը՝ Սարիրի տիրոջ դստերը։*

*Ապա Բուղան իր զորքի մի մասի հետ Ջիրաքին ուղարկեց Գարդման (Ջարդաման), որը Պարտավի (Բարդաա) և Տփղիսի մեջտեղ էր գտնվում։ Սա գրավեց այն և նրա պատրիկին[10] գերի վերցրեց։ Ապա Բուղան գնաց Իսա իբն Յուսուֆի[11] դեմ, որը Քթիշ (Քատիշ) ամրոցում էր Բայլականի գավառում։ Նա գրավեց[12] այն և նրան գերի բռնելով տարավ։ Նրա հետ տարավ նաև Աբու-լ-Աբբաս ալ-Վարիսիին, որի անունն էր Սմբատ որդի Աշոտի (Սինբաթ իբն Աշութ), ինչպես նաև Սմբատի որդի Սահլի որդի Մուավիային (Մուավիա իբն Սահլ իբն Սինբաթ)՝ Առանի պատրիկին[13]։*

*1. Հայկական սկզբնաղբյուրների հիշած Ապուսեթն է, որը Հայաստանի կառավարիչ է եղել 850–851 թվականներին։*

*2. Աբու Սաիդը մահացել է 851 թ. ապրիլի 28-ին։*

*3. Խոսքը Աբու-Սաիդի որդու՝ Յուսուֆ իբն Մուհամմադի մասին է, որը Հայաստանի կառավարիչ է եղել 851–852 թվականներին։*

*4. Այսինքն՝ 852 թվականին։*

*5. Բագարատ Բագրատունին պահանջել է իրեն նշանակել Արմինիայի ոստիկան։*

*6. Խոսքը Բագարատի եղբորորդի Հովնան Խութեցու մասին է։*

*7. Սա Բաղեշի և Արզնի արաբ ամիրան էր։*

*8. Այսինքն՝ Մուշ քաղաքը։*

*9. Խոսքը Բագարատ Բագրատունու կրտսեր եղբոր, սպարապետ, ապա Հայոց*

*իշխան Սմբատ Բագրատունու մասին է:*

*10. Այս պատրիկը Գարդմանի Կտրիճ իշխանն էր:*

*11. Խոսքը Եսայի Աբու Մուսե իշխանի մասին է:*

*12. Իրականում Բուղան Քթիշը չի կարողացել գրավել: Ամրոցի պաշտպանները մի ամբողջ տարի հաջողությամբ ետ են շպրտել Բուղայի 28 հարձակումները: Ինքը՝ Եսայի Աբու Մուսեն բերդից իջել է այն բանից հետո, երբ ստացել է խալիֆի հրովարտակը և Բուղայի հետ գնացել Սամառա:*

*13. Սա Արցախի իշխան Հովհաննես Մուավիան էր՝ Սահլ Սմբատյանի որդին:*





## ԲԱԺԻՆ ՉՈՐՐՈՐԴ

# ԱՂԱՆԴԱՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ
## (IV-IX դարեր)

## Կ. ՊՈԼՍԻ ԱՏՏԻԿՈՍ ՊԱՏՐԻԱՐՔԻ ԹՈՒՂԹԸ ՀԱՅՈՑ ՍԱՀԱԿ Ա ՊԱՐԹԵՎ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԲՈՐԲՈՐԻՏՆԵՐԻ ԱՂԱՆԴԻ ՄԱՍԻՆ

### *ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻ*

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

***Գլ. ԾԷ.*** *«Կոստանդնուպոլսի անկախ եպիսկոպոս Ատտիկոսը[1] մեր սիրելի եղբորը և աթոռակցին՝ Հայոց Սահակ եպիսկոպոսին, ողջունում է Տիրոջ միջոցով:*

*... Արդ՝ մեր ինքնակալ Ավգուստոսի[2] հրամանով քեզ իրավունք է տրվում ուսուցանել մեր կողմի (Հայաստանը)[3], իսկ բորբորիտոնների աղանդը[4] կամ հավանությամբ բեր կամ հալածիր քո վիճակից: Եվ քեզանից ուղարկված Մեսրոպին[5] ձեռնադրեցինք եկղեսիաստիկոս»[6]:*

*1. Ատտիկոս եպիսկոպոսը եղել է նշանավոր եկեղեցական գործիչ, Կ. Պոլսի «տիեզերական» պատրիարք (405-425):*

*2. Խոսքը Բյուզանդիայի Թեոդոսիոս II Փոքր կայսեր մասին է:*

*3. Այսինքն՝ Արևմտյան (Բյուզանդական) Հայաստան:*

*4. Բորբորիտոնների աղանդը ծագել է Ասորիքում: II-III դարերում այն լայն տարածում է ստացել Մերձավոր Արևելքի երկրներում: IV դարում Հայաստանում բորբորիտոնների աղանդի կենտրոնը Փոքր Հայքն էր, իսկ առաջնորդը՝ Սեբաստիայի հայազգի եպիսկոպոս Եվստաթիոսը (315-379):*

*Շարժումը սերտ աղերս է ունեցել գնոստիցիզմի հետ. բորբորիտոնները բարոյական ոչ մի օրենք չեն ճանաչել, քարոզել են սանձարձակ անբարոյականություն, անմաքուր բարքեր ու գործեր:*

*5. Ակնարկում է Մեսրոպ Մաշտոցին:*

*6. «Եկղեսիաստիկոս» – հունարեն բառ է, որ նշանակում է ուղղափառ եկեղեցու անդամ:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԲՈՐԲՈՐԻՏՆԵՐԻ ԱՂԱՆԴԸ ՀԱԼԱԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

### Գիրք Գ

***Գլ. ԾԸ.*** *Այս ժամանակ Հայոց նախարարներից շատերը եկան Մեծ Սահակին հրավիրելու, որպեսզի նա գա միջամտի և բոլորին միաբանության բերի: Որովհետև պարսից Վռամ Թագավորն իմանալով, որ առանց Հայոց նախարարների չի կարող մեր երկիրը պահել, հաշտության բանակցություն է սկսում Սմբատ ասպետի[1] միջոցով: Ուստի (Սահակը) Մեսրոպին է հանձնում արևմտյան կողմի ուսուցման գործը և նրա մոտ է թողնում իր Հմայակ և Համազասպյան թոռներին՝ Վարդան ստրատելատի[2] եղբայրներին: Հրամայում է քննել պղծագործ բորբորիտներին, և եթե ո՛չ մեղմությամբ, և ո՛չ խստությամբ ուղղության չգան, ապա չարչարանքներով հալածել, ինչպես Թշնամիներ, Թշնամիներից վրեժ առնեն, որպեսզի իրավացի մահով հոգիների անիրավ մահը խայտառակվի: Իսկ ինքն անցնում գալիս է Այրարատյան գավառը:*

*1. Խոսքը հավանաբար Բագարատ Բագրատունու որդի այն Սմբատ ասպետի մասին է, որն աչքի էր ընկել 371 Թ. Ձիրավի ճակատամարտի ժամանակ:*
*2. Ակնարկը վերաբերում է Հայոց սպարապետ Վարդան Մամիկոնյանին:*

## ԿՈՐՅՈՒՆԸ ԲՈՐԲՈՐԻՏՆԵՐԻ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՎԱՐՔ ՄԱՇՏՈՑԻ

***Գլ. ԺՁ...*** *Ապա դրանից հետո[1] նա ձեռնարկեց [Բյուզանդական Հայաստանի սպարապետը][2] անպատշաճ ու ծուռ բարբարիանոս [բորբորիտների] աղանդը քննել: Եվ երբ ոչ մի հնար չգտավ ուղղության բերելու, սկսեց Թշվառացնող գավազանը գործադրել խիստ ծանր պատուհաններով՝ բանտերով, տանջանքներով, գելարաններով: Իսկ երբ դրանով էլ փրկությունից զուրկ մնացին, [այն ժամանակ] ջարդ տվին [սաստիկ ծեծեցին], ապա խանձեցին, մրեցին ու պեսպես ձևերով խայտառակեցին և [Հայոց] աշխարհից դուրս քշեցին:*

*1. Ակնարկում է Մեսրոպ Մաշտոցի կողմից Արևմտյան (Բյուզանդական) Հայաստանում դպրոցներ բացելու իրողությունը:*
*2. Խոսքն Արևմտյան Հայաստանի սպարապետ Վասակ Մամիկոնյանի մասին է:*

## ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐՆ ԸՆԴԴԵՄ ԱՂԱՆԴԱՎՈՐՆԵՐԻ ԸՍՏ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ

### Գիրք Գ

***Գլ. Կ.*** *Մեսրոպը ... իր աշակերտներից վերակացուներ թողնելով՝ Սպերում Ղևոնդին և Ենովքին, Դերջանում նրանց Գինդ եպիսկոպոսին, իսկ Եկեղյաց գավառում Դիանանին, ինքը գալիս է Այրարատ և գնում է Գողթն, իր առաջին բնակության գավառը:*



***Մեսրոպ Մաշտոց***
***(Հատված 1776 թ. ձեռագրից)***

*Որովհետև հեթանոսական աղանդից մնացած դառն արմատը անիշխանության ժամանակ նորից երևան էր եկել և շատերի մեջ տարածվել, Երանելին նրանց բնաջինջ արեց Շաբիթի որդի հայրաբարո Գիտի օգնությամբ, որ այդ գավառի իշխանն էր: Նաև տեղեկացավ, որ չարության առաջին ուսուցիչները Բաղասական կողմերումն են: Նա գնաց այնտեղ և շատերին ուղղության բերեց և քչերին անդառնալի կերպով հալածեց Հոնաց երկիրը: Այդ կողմերի ուսուցման գործը վստահելով Մուշեղ անունով եպիսկոպոսին՝ ինքը դարձավ Գարդմանի ձորի կողմերը, որովհետև լսեց, թե այնտեղ ևս կան նույն աղանդին հետևողներ: Նրանց էլ գտնելով՝ ուղիղ ճանապարհ է բերում, նորից ուղղության բերելով գարդմանացիների իշխանին, որի անունն էր Խուրս: Այստեղից նրան հրավիրում է գուգարացիների Աշուշա բդեշխը, խնդրելով, որ նույն գործի համար[1] գա իր իշխանության երկիրը, Տաշիրք գավառը:*

*1. «Նույն գործի համար» արտահայտությունն անորոշ է. խոսքը դպրոցներ բացելու և ուսուցանելու մասին է, թե աղանդավորների դեմ պայքարելու:*

## ՇԱՀԱՊԻՎԱՆԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ ՄԾՂՆԵՈՒԹՅԱՆ ԴԵՄ

***Շահապիվանի եկեղեցական ժողովը գումարվել է 444 թ. հունիսի 24-ին Ծաղկոտն գավառի Շահապիվան ավանում: Ժամանակի Հայոց կաթողիկոսն էր Հովսեփ Ա Վայոցձորեցին, իսկ մարզպանը՝ Վասակ Սյունեցին: Շահապիվանի ժողովին մասնակցել են երկրի նշանավոր հոգևոր և աշխարհիկ գործիչները (թվով 40 մարդ): Ժողովի նպատակն է եղել ամրապնդել Հայոց եկեղեցու ներքին կարգերն ու բարոյական նորմերը, որոնք բավականին թուլացել էին պարսկական տիրապետության օրոք:***

***Մասնավորապես հատուկ որոշում է ընդունվել աշխուժացած աղանդավորական շարժումների դեմ: Շահապիվանի ժողովը վիթխարի դեր է խաղացել հայ եկեղեցական կյանքի աշխուժացման, կարգ ու կանոնի վերահաստատման, եկեղեցու հիմքերի ամրապնդման գործում:***

***Շահապիվանի, ինչպես նաև եկեղեցական այլ ժողովների որոշումները և կանոնական ցաքուցրիվ նյութերը VIII դարի սկզբներին հավաքել, դասակարգել, խմբագրել ու «Կանոնագիրք Հայոց» ժողովածուում է զետեղել ականավոր եկեղեցական գործիչ, մատենագիր ու կաթողիկոս Հովհան Գ Օձնեցին:***

***«Կանոնագիրք Հայոց»-ի գիտաքննական համահավաք բնագիրը հրատարակել է Վ. Ա. Հակոբյանը (տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հատ. Ա, Երևան, 1964): Կանոնագրքից ստորև բերված հատվածները տրվում են Ա. Գ. Աբրահամյանի թարգմանությամբ:***

### ԿԱՆՈՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ
***Հատ. Ա, էջ 450, 461–466***

*14. Եպիսկոպոսը կամ երեցը, սարկավագը կամ հոգևոր պաշտոնյաներից ու միաբաններից ով ուզում է լինի, իրավունք չունի կին պահելու, ինչպես մծղնեականների սովորությունն է: Իսկ եթե պահի, և այդ վկայությամբ հաստատվի, այդ անձը, ինչպիսի կոչում էլ որ ունենա, իբրև ամբարիշտ և մաքսավոր պիտի հեռացվի իր պաշտոնից, քանի որ Սուրբ եկեղեցին և տերունական Սուրբ խորհուրդն անարատներին են ընդունում. արատավորներն անարատների միջոցով են փրկվում:*

*19. Եթե մեկը մծղնեության[1] մեջ մեղադրվի՝ լինի դա երեց, սարկավագ կամ աբեղաներից, պիտի հոգևոր կոչումից կարգալույծ լինի,*

*աղվեսաղբյուր պիտի խարանվի ճակատին և տարվի ճգնավորների մոտ ապաշխարության: Իսկ եթե կրկին անգամ նա գտնվի մեղմնեությանմեջ, նրա երկու ջլերը պիտի կտրել և ուրկանոց տանել, քանի որ «Մարդը պատվի մեջ էր և չհասկացավ»[2]: Այդ նույն պատիժը վերաբերում է նաև աբեղաներին: Իսկ եթե տղամարդն իր կնոջ և որդիներով գտնվի այդ աղանդի մեջ, տղամարդկանց, կանանց և չափահասության հասած մանուկների ջլերը պետք է կտրել, աղվեսաղբյուր խարանել ճակատներին և տանել գողենոց՝ ապաշխարության համար: Իսկ այն մանուկները, որոնք դեռ չեն գիտակցում պղծությունը, նրանք պետք է վերցվեն և տրվեն Աստծու սուրբ պաշտոնյաների ձեռքը, որպեսզի կերակրեն և սովորեցնեն նրանց ճշմարիտ հավատը և Տիրոջ երկյուղը:*

*20. Եթե որևէ տեղ ժողովրդի մեջ գտնվի չարագործ [մծղնեական], երեցներն իմանան այդ մասին ու չհայտնեն եպիսկոպոսին, հետո երբ քննությամբ պարզվի որ, իրոք, այդպես է եղել՝ երեցը օրեր ու ամիսներ առաջ իմացել է այդ մասին և չի հայտնել եպիսկոպոսին, երեցը ենթակա է այն պատժին, որը սահմանված է մծղնեության համար: Նման երեցը չպիտի երեցություն ունի իր ամբողջ կյանքի ընթացքում, որպեսզի նրան փոխարինող երեցը կամ վանականը տեսնելով այդ՝ ճշմարտությամբ հովվի ժողովրդին:*

*Իսկ եթե երեցն իմացել է և հայտնել է եպիսկոպոսին ու վկայությամբ պարզվի, որ եպիսկոպոսը կաշառք վերցնելով՝ ծածկել է կամ աչառու է գտնվել. և վկայությամբ հաստատվի, որ, իրոք, եպիսկոպոսն ականջի ետև է ձգել երեցի բողոքը, արհամարհել է Աստծու պատվիրանը և կորստյան մատնվածի խնդրով չի զբաղվել, աստվածային օրենքներին նախանձախնդիր և վրեժխնդիր չի գտնվել, նա պաշտոնանկ պիտի լինի չնացողներին թաքցնելու համար, իսկ այդ դեպքում երեցն անպարտ է:*

*Իսկ եթե եպիսկոպոսը ջանացել է վրեժխնդիր լինել, և եպիսկոպոսի տարած այդ աշխատանքի մասին վկայեն երեցներն ու այլ մարդիկ, և երբ հաստատվի որ նա, իրոք, չարագործին հայտնաբերել և հայտնել է իշխանությանը, իսկ տվյալ երկրամասի իշխանը ծածկել է չնացողներին, թաքցրել է կորստաբեր արծաթի կամ աչառության և կամ այլ ծառայության պատճառով, չի սիրել Քրիստոսին, չի կատարել նրա պատվիրանները և Տիրոջ օրենքները, մարդկանց հոգու և մարմնի նկատմամբ վրեժխնդիր չի գտնվել, այդպիսին թող նզովյալ լինի, եկեղեցուց վտարվի, մինչև որ պղծագործին տան եպիսկոպոսի ձեռքը:*

*Եթե պղծությունները կատարվեն նախարարի տանը, և հանցագործ լինի նրա կինը, կամ նրա դուստրը, կամ որդին, և կամ անձամբ ինքը, և եթե նա ո՛չ ընտանիքն է տալիս եպիսկոպոսի ձեռքը և ո՛չ էլ ինքն է վերադառնում սրբության՝ ցանկանալով բռնի ապաստան տալ չարագործին, թող այդպիսին ողջ տնով, ծնունդով և կյանքով նզովյալ լինի, չհամարձակվի ժողովրդի մեջ դուրս գալ, թող ընկերներն ու բոլոր մարդիկ նրա հետ հաղորդակցության մեջ չմտնեն այնքան ժամանակ, որքան ժամանակ որ նա գտնվում է պղծության մեջ, մինչև որ ետ կդառնա սրբության: Իսկ եթե ինքը չէ պղծության մեջ, այլ ընտանիքի անդամները կամ ծառաները, թող նրանց տա գլխավոր եպիսկոպոսի ձեռքը՝ կշտամբանքի համար:*

*Իսկ եթե պղծությունը կատարվի ոստիկանի տանը, և այդ անօրը լինի ինքը կամ ընտանիքի անդամը, ինչպես ասացինք, ընտանիքը թող պատժի ենթարկվի օրինական այն պատժով, որը սահմանեցինք: Իսկ եթե ինքը ևս իր ընտանիքով մծղնեության մեջ գտնվի, թող բռնեն պղծագործին և իր ընտանիքով բերեն հրապարակ՝ գլխավոր եպիսկոպոսի, մեծամեծ իշխանների ու ավագ դատավորների առջև և համատեղ վրեժխնդիր լինեն՝ ըստ աստվածային օրինաց, որ ուրիշները, տեսնելով այդ, սրբությամբ և երկյուղով պաշտեն բոլորիս Արարչին, որպեսզի հաստատուն ու կատարյալ լինի աստվածապաշտության կարգը, որպեսզի հետամուտ լինեն և հարգեն սրբերին, որպեսզի խոսքով և գործով լինենք Աստծու ճշմարիտ ծառաներ և մեր բարի հատուցումով բարերար Աստծուց ակնկալենք և ժառանգենք անվախճան պարգևները, հավիտյանս հավիտենից, ամեն:*

*1. Մծղնեականների (մեսալյաններ) աղանդը ծագել է Միջագետքում I–II դարերում: II–IV դարերում այն լայն տարածում է ստացել Ասորիքում, Եգիպտոսում, Փոքր Ասիայում: Հայաստանում աղանդը թեև ի հայտ է եկել V դ. սկզբներին, սակայն գոյատևել է բավականին երկար՝ մինչև պավլիկյան շարժումը: Մծղնեականների վարդապետության հիմքում ընկած են եղել գնոստիկյան գաղափարները, որոնք թափանցելով քրիստոնեության մեջ՝ փորձել են քայքայել քրիստոնեական եկեղեցին ներսից, փոխել նրա բնույթը, մանավանդ նրա փրկագործության գաղափարը, Փրկչի ավետարանական ուսմունքը:*

*Վաղ ավատատիրական Հայաստանում տարածված մծղնեական և այլ աղանդավորական շարժումների մասին մանրամասն տե՛ս Ե. Տեր-Մինասյանի՝ «Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից» մենագրությունը (Երևան, 1968) և Հր. Բարթիկյանի՝ «Աղանդավորական շարժումները Հայաստանում ըստ միջնադարի հայ և օտար հեղինակների» հոդվածը («Լրաբեր» ՀԳԱ ակադեմիայի, 1984, № 10):*

*2. **Սաղմոս, ԽԸ**, 13, 21:*

## ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻՆ ԸՆԴԴԵՄ ՄԱՐԿԻՈՆԻ

***Նշանավոր մատենագիր, աստվածաբան, իմաստասեր, եկեղեցական գործիչ Եզնիկ Կողբացին (380–450) եղել է Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի ավագագույն աշակերտներից: Ստացել է փայլուն կրթություն, սովորել է Եդեսիայի նշանավոր ուսումնա-գիտական կենտրոնում: Գործուն մասնակցություն է ունեցել Աստվածաշնչի և աստվածաբանական այլ երկասիրությունների թարգմանությանը: Զբաղեցրել է եկեղեցական պատասխանատու պաշտոններ, եղել Բագրևանդի թեմակալ առաջնորդ: 449 թվականին մասնակցել է Արտաշատի նշանավոր ժողովին, որը մերժել է զրադաշտականություն ընդունելու պարսիկների առաջարկը:***

***Եզնիկը հեղինակ է ջատագովական «Եղծ աղանդոց» երկասիրության: Սույն աշխատությունը դասական հայրախոսության, համաշխարհային աստվածաբանական-իմաստասիրական մտքի երևելի գրական հուշարձաններից է: Երկն ունեցել է հայերեն բազում հրատարակություններ և օտարալեզու թարգմանություններ: Ստորև տրվող հատվածները տրվում են ըստ Ա. Ա. Աբրահամյանի աշխարհաբար թարգմանության, որը լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարով (Երևան, 1970):***

### ԵՂԾ ԱՂԱՆԴՈՑ

### *Գիրք Դ*

*__Գլ. ԺԲ__ ... Եվ դարձյալ՝ Հիսուսն[1] իր քարոզած «չբարկանալ»-ով ու «չտուփալ»-ով Օրենքի Աստծուն այնչափ է Աստված համարում, որ նրա ասածները հաստատում է Ավետարանի մեջ, սակայն նրանք (մարկիոնականները) ցնդաբանում են, թե՝ «Հիսուսն իրենց հակառակն է ուսուցանում»: Նույնպես էլ և՛ Հնում, և՛ Նորում (կտակարաններում) գտնում ենք ուտելիքների մասին, որ Աստծուց տրված են որպես սնունդ: Այնտեղ ասում է՝ «Մորթի՛ր և կե՛ր բոլոր ուտելի անասուններն ու թռչունները»[2], և այստեղ ասում է, թե՝ «Ամեն բան, որ մտնում է մարդու բերանով, նրան չի պղծում, այլ ինչ որ դուրս է գալիս բերանից, այն է պղծում մարդուն»[3]: Իսկ այդ բոլոր բաներից մեկն էլ միսն է: Եվ եթե (մսով) կերակուրները պիղծ լինեին, նախ հենց ինքը նրանցից չէր ուտի և ապա ուրիշներին չէր առաջարկի ուտել:*

*Իսկ եթե Նորում (Նոր Կտակարանում) ոչ մի տեղ չենք գտնում, որ նա ասած լինի, թե՝ «Այսինչ բանը չուտես», պարզ է, որ վերացրեց*

*ուտելիքների նկատմամբ Օրենքով սահմանված խտրությունը: Դրա համար էլ (նա ևս) մեղավորների, մաքսավորների ու փարիսեցիների հետ ուտում ու խմում էր[4]: Զատկի մասին էլ աշակերտներին ասում է, թե՝ «Շատ ցանկացա այս զատիկը ձեզ հետ ճաշակել»[5]: Մի՞թե զատկի մասին ևս կասեն, թե ձուկ էր և ոչ գառ, քանի որ Քրիստոսը բոլոր կերակուրներն անխտիր ուտում էր, ինչպես որ հայտնի է Ավետարանից:*

*Բայց եթե ասեն, որ Քրիստոսը հարություն առնելուց հետո ձուկ կերավ, ոչ թե միս, այդ պատճառով իրենք էլ ոչ թե միս, այլ ձուկ են ուտում, ապա պետք է պատասխանել, թե նրանք էլ թող ձուկ ուտեն ոչ այժմ, այլ՝ հարության ժամանակ, ինչպես որ նա էլ հարություն առնելուց հետո կերավ ձուկը, որ գտավ ձկնորսների մոտ[6]:*

*Իսկ որ ձուկն էլ միս է, բոլորին հայտնի է. որովհետև ինչը որ մարմին, արյուն, ճարպ ու ոսկրեր ունի, պետք է մսավոր ու կենդանի լինի: Եվ ձուկ կա, որի կողերի վրա խոզի ազդրերի նման փափկամիս է լինում: Այնքան արյուն է դուրս գալիս (նրանից), որքան ոչխարից չի ելնում: Եվ (նա) այնպիսի զզվելի ուտելիքներ է ուտում, որ գազաններն ու անասունները չեն ուտում: Առավել ևս գազան պետք է կոչել հենց ձուկը, որ իր ցեղակիցներին անխտիր ուտում է: Իսկ անասունները նրանից այնքան են մաքուր, որ նրանցից զոհեր ու ողջակեզներ են մատուցվում Աստծուն, մինչդեռ ձկներից այդպիսի (բաներ) չեն (արվում):*

*Այլև որպես խորհրդանիշ ու օրինակ այն մեծ երևույթի, որ հայտնըվելու էր, հանդես էին բերվում ոչխարն ու տավարը, և ոչ թե ձկները. ինչպես գառը, որի արյունով փրկվեցին Իսրայելի որդիների անդրանիկները՝ Եգիպտոսում, խոյը, որ մորթվեց Իսահակի փոխարեն[7], օրինակ էին ճշմարիտ գառի[8], որը (իր վրա) է կրում աշխարհի մեղքերը: (Այդպիսի օրինակ էր) և երինջը, որ բանակից դուրս մորթեցին որպես ողջակեզ[9], որի ձևով էլ Քրիստոսը քաղաքից դուրս չարչարվեց[10]: Եվ Դավիթն ասում է՝ «Հաճելի կլինի տիրոջը՝ մատղաշ հորթի նման»[11] և ոչ թե փափուկ ձկան նման. որովհետև չնայած որ ձուկը օրինակ է բերվում, (բայց) բերվում է որպես օրինակ գերեզմանում (լինելու) և ոչ թե կենդանի ժամանակի համար՝ համաձայն տիրոջ այն խոսքի, թե՝ «Ինչպես որ Հովնանը ձկան փորում մնաց երեք ցերեկ ու երեք գիշեր, այնպես էլ մարդու որդին պիտի մտնի երկրի սիրտը և այնտեղ մնա երեք օր ու երեք գիշեր»[12]: Եվ այսպես Սուրբ գրքում չենք գտնում, թե ձուկը սրբագործեց ու հանձնարարեց որպես կերակուր և հրաժարեցրեց մսից՝ որպես պիղծ ու անպետք բանից:*

*Այլև Օրենքում գրված է, թե՝ «Ձեզ թույլ տվեցի ուտել անասուն-*

*ներն ու թռչունները՝ բանջարեղենի նման, միայն թե արյուն ու սատկածի միս չուտեք, որովհետև անասունի կենդանությունը իր արյունն է»[13]: Առաքյալներն էլ Երուսաղեմից Անտիոք ուղղած թղթում նույնը հաստատեցին, թե՝ «Զեռնպահ մնացեք արյունից, խեղդվածից, սատկածից և պոռնկությունից»[14], չասացին՝ մսից էլ: Նաև Օրենքում ուտելի անասունները մաքուր է կոչում, իսկ չուտելիները՝ պիղծ. բայց ոչ այն պատճառով, որ էությամբ էին պիղծ, այլ մարդկանց ճաշակելիքին ոչ ախորժելի եղողներն է պիղծ կոչում. որովհետև գիտե, որ բան կա, որը (մարդիկ) ուտել ախորժում են, բան էլ կա, որը չեն ախորժում ուտել, դրա համաձայն էլ օրենք սահմանեց:*

*Իսկ որ ուտելիքներից ոչ մեկը պիղծ չէ, այդ մասին Տիրոջից լսենք՝ «Չկա մի բան, որ մտնի մարդու փորը և կարողանա մարդուն պղծել, այլ ինչ որ դուրս է գալիս մարդուց, այն է պղծում նրան»[15]: Եվ առաքյալը, առաջուց մարգարեաբար տեսնելով աղանդավորների անտեղի հպարտությունը, ասում է՝ «Կրճատում են ուտելիքները ու արգելում ամուսնությունը, որ Աստված սահմանեց հավատացյալների համար, որպեսզի մխիթարվեն՝ վայելելով գոհունակությամբ. դա սրբագործվում է Աստծու խոսքով ու աղոթքով»[16]: Բայց ոչ թե պիղծ լինելով է սրբագործվում, այլ որ նրանց կողմից պիղծ էր կարծվում (կուռքերին) զոհաբերվելու պատճառով: Առաքյալն էլ այդպիսի ուտելիքի մասին է ասում՝ թե՝ «Սրբագործվում է Աստծու խոսքով ու աղոթքով»[17]: Այդ պատճառով մյուս թղթում էլ ասում է, թե՝ «Երբ անհավատներից մեկը ձեզ ճաշի հրավիրի, և դուք գնաք, այն ամենը, ինչ որ դնի ձեր առաջ, կուտեք և խղճի խայթ չզգաք»[18]: Հետևաբար պարզ է, որ այդ բոլորից մեկն էլ միսն էր: Նաև ասում է՝ «Ինչ որ վաճառվի մակեղոնում[19], այսինքն՝ մսավաճառանոցում, կուտեք և խղճի խայթ չզգաք»[20]:*

*Բայց ասում են, թե առաքյալն ասում է՝ «Լավ է միս չուտել, գինի չխմել և ոչ էլ (այնպիսի բան անել), որով իմ եղբայրը գայթակղվում է»[21], և դարձյալ, թե՝ «Հավիտյան միս չեմ ուտի, որով եղբայրս գայթակղվում է»[22]:*

***Պատասխանենք:** — Եթե եղբայրը գայթակղվում է ձկնով (ևս), ուրեմն այն էլ չպետք է ուտել. չգայթակղելու համար չպետք է ուտել և ոչ այն պատճառով, թե ուտելիքների մեջ պիղծ բան կա: Եվ մանավանդ գինով (կարելի է գայթակղվել), որով հենց չաերը ցոփանում են: Ոչ այնքան միսն է մեղք գործել տալիս (ուտողներին), որքան գինին է փչացնում խմողներին ու գայթակղում տեսնողներին: Եվ ինչպե՞ս է, որ մարկիոնականները մսից ձեռնպահ են մնում, իսկ գինուց չեն զգուշանում. չէ՞ որ երկուսին էլ վերաբերում է այն խոսքը, (որ,*

*առաքյալն) ասում է՝ «Միս չուտել և գինի չխմել». և դա պատճառ բերելով՝ ավելացնում է, թե՝ «... ոչ էլ (այնպիսի բան անել), որով իմ եղբայրը գայթակղվում կամ տկարանում է»[23]: Սրանով ցույց է տրվում, թե այն միտքը, որ նա արտահայտել է, գայթակղվելուն է վերաբերում: Եվ նա ուտելիքները պիղծ չի համարում, երբ ասում է՝ «Կա մարդ, որ վստահում է ուտել ամեն ինչ»[24]: «Եթե,– ասում է,– հավատում ես, որ ուտելիքները սրբագործվում են Աստծու խոսքով ու աղոթքով, կե՛ր և խտրություն մի՛ դնիր»[25]: Իսկ եթե հավատով տկարացած ես և խղճի խայթ ես զգում, միայն բանջար կեր ու մի՛ գայթակղվիր: Եվ եթե չես վստահում ուտել ամեն բան՝ իբրև մաքուր, մի՛ համարձակվիր ուտողին մեղադրել. նույնպես և ուտողը չպիտի արհամարհի քեզ՝ որպես տկարի, որ չես վստահում ուտել ամեն բան՝ իբրև մաքուր: Որովհետև մեզ Աստծուն ներկայացնում կամ Աստծու աչքից գցում են ոչ թե ուտելիքները, այլ՝ կա՛մ հավատը, կա՛մ խղճմտանքն ու գայթակղությունը:*

## *ԺԳ*

*«Իսկ ձեր կրոնավորները ինչո՞ւ են հրաժարվում մսից»,– ասում են (նրանք):*

*Մեր կրոնավորները (որոշ) ուտելիքներից հրաժարվում են ոչ այն պատճառով, որ ուտելիքները համարում են պիղծ կամ (առաջացած) հյուլեից՝ որպես ինչ-որ չար բանից: Եթե (նրանք) ուխտյալ լինեին ուտելիքները պիղծ համարելու պատճառով, ապա նրանց ուխտյալությունն ուխտյալություն չէր համարվի: Բայց ուտելիքներից իրենց զրկում են, որպեսզի այն սրբությունը, որ մտադրվել են պահել, դյուրությամբ պահեն:*

*Դրա համար էլ մեր հայրերը՝ սուրբ եպիսկոպոսները, այս կանոնը սահմանեցին՝ «Եթե միս չուտող որևէ հավատացյալ մսով բանջար եփելու դեպքում չկամենա այն բանջարից ուտել, թող նզովված լինի»: Ինչո՞ւ: Նախ՝ որ չհամարձակվի անպետք համարել Աստծու տված ուտելիքները, և ապա՝ որ անտեղի հպարտությամբ չսխալվի՝ կարծելով, թե դրանով ուրիշ մարդկանցից առավել է:*

*Նաև Սուրբ եկեղեցու կույսերը կուսությունը նրա համար չեն պահում, որ Աստծուց սահմանված ամուսնությունը պղծություն են համարում, ինչպես որ Մարկիոնը[26], Մանին[27] ու մծղնյաններն[28] (են ընդունում). որովհետև, եթե այդ մտքով ուխտյալ եղած լինեին, ապա կուսությունն էլ պատշաճ կուսություն չէր համարվի: Բայց Աստծուն առավել չափով սիրելուց են հրաժարվում նրա ստեղծած բարիքնե-*

*րից, որպեսզի, նմանվելով Աստծու հրեշտակներին, որոնց մեջ ո՛չ արու կա, ո՛չ էգ, նույն առաքինությունը ցուցաբերեն նաև երկրի վրա՝ ըստ այն (խոսքի), թե՝ «Կան ներքինիներ, որոնք իրենց ներքինի դարձրին երկնքի արքայության համար, որպեսզի հարության ժամանակ նմանվեն հրեշտակներին»[29]: Եվ առաքյալը կույսերին վստահելի մարդ է համարում, բայց, նայելով բնությանը, չի համարձակվում բացահայտորեն հրամայել (կույս դառնալ), այլ հասկացնելով համոզում է, ինչպես որ տերն էլ հասկացնում է և ոչ ստիպում:*

### *ԺԴ*

*Մարկիոնականները ամուսնությունն ու մսակերությունը մերժում են, և, աշխարհականների հետ կուսության ուխտ դնելով, ուխտադրուժ են լինում, որովհետև ցանկությանը չդիմանալու պատճառով նորից ապաշխարության են ենթարկվում:*

*Արդ՝ եթե Օրենքին չեն հավատում, որն ասում է՝ «Տղամարդը պիտի թողնի իր հորն ու մորը ու պիտի գնա իր կնոջ ետևից, և երկուսը մի մարմին պիտի լինեն»[30], Հիսուսին էլ ինչո՞ւ չեն հավատում, որ նույնն է հաստատում՝ ավելացնելով, թե՝ «Ինչ որ Աստված միացրեց, մարդը թող չբաժանի»[31]:*



**Եզնիկ Կողբացի**
*(գործ Ա. Ֆեթվաճյանի)*

### *ԺԵ*

*Բայց ինչի՞ց է, որ Մարկիոնը, Մանին և սրանց նման ուրիշները չեն հավատում մարմինների հարությանը:*

*Նրանք ասում են՝ «Առաքյալն ասաց, թե՝ «Մարմինն ու արյունը Աստծու արքայությունը չեն ժառանգում, ոչ էլ ապականությունը՝*

*անապականություն»[32], և դարձյալ, թե՝ «Ցանկանում եմ այս մարմնից դուրս գալ և տիրոջ հետ լինել»[33]: «Դրանով պարզ է,– ասում են,– որ մարմինը, նյութական լինելու պատճառով, հարության չի արժանացվում»:*

*Եվ եթե, նյութական լինելու պատճառով, մարմինը չի արժանացվում արքայության, ապա հոգիներն էլ, արդարից լինելու պատճառով, չպիտի արժանանան բարու արքայությանը: Բայց նույն առաքյալը նրանց մեղադրում է հենց նույն տեղում, երբ, մատնացույց անելով մարմինը, ասում է, թե՝ «Այս ապականությունը պիտի զգեստավորվի անապականությամբ, և այս մահկանացուն՝ անմահությամբ»[34]: Հետևաբար պարզ է, որ ոչ թե հոգիներն է կոչում ապականության ու մահվան ենթակա, այլ՝ մարմինները: Մի ուրիշ թղթում էլ ասում է, թե՝ «Մենք բոլորս պիտի ներկայանանք Քրիստոսի ատյանի առաջ, որպեսզի յուրաքանչյուր ոք իր մարմնով ընդունի (նրա դիմաց), ինչ որ առաջ կատարեց՝ թե՛ բարի, թե՛ չար»[35]: Տեսնո՞ւմ ես, որ ասում է, թե մարմնով հանդերձ պետք է կրեն չարիքները կամ բարությունները և ոչ թե միայն հոգով:*

*«Բայց,– ասում են,– առաքյալն ասաց, թե ապականությունն անապականություն չի ժառանգում»:*

*Ով բանագող Մարկիոն. մեկը լսում է, իսկ մյուսին ուշադրություն չի դարձնում: Եթե ուղիղ մտքով լսեր այն, թե՝ «Ապականությունն անապականություն չի ժառանգում», կկարողանար կանգնել ճշմարտության վրա. որովհետև առաքյալն այնքան ստույգ է քարոզում մարմնի հարությունը, որ մինչև իսկ բազմաթիվ օրինակներ է մեջտեղ բերում:*

*Նախ Քրիստոսի առաջին և բուն հարությունն (է հիշատակում), թե՝ «Ըստ Գրքի՝ Քրիստոսը մեռավ, թաղվեց ու երրորդ օրը հարություն առավ»[36]: Եվ այնտեղ կանգ առնելով՝ հարությունը հաստատելու համար բազմաթիվ հանգամանքներ է ցույց տալիս և առավել այն, որ կարծես Մարկիոնի ու Մանիի ականջին գոռալով ասում է՝ «Եթե մեռածները հարություն չեն առնում, ի՞նչ պիտի անեն նրանք, որոնք մեռածների համար մկրտվեցին»[37]: «Դուք,– ասում է,– ընդունում եք, որ մարմինները, նյութական լինելու պատճառով, հարություն չեն առնում. եթե մահկանացու մարմինները հարություն չեն առնում, կենդանի հոգիները մեռած մարմինների համար ինչո՞ւ են վկայում, և կամ մահկանացու մարմինները կենդանի հոգիների հետ ինչո՞ւ են մկրտվում, եթե, ինչպես ասում եք, մահկանացու մարմինները հարություն չեն առնելու»:*

*Այսպե՛ս պետք է հասկանալ այն խոսքերը և ոչ թե (այնպես), ինչպես Մարկիոնն է զրաբանում, թե՝ «Մեռած երեխայի փոխարեն պետք է նրա կենդանի մերձավորին մկրտել, որ այնտեղ նրանը համարվի»: Մարկիոնականները հենց այդպես էլ անում են: Սակայն նրանց մեղադրում է տերունական խոսքը, որ ասում է՝ «Եթե մեկը նորից չծնվի, չի կարող տեսնել Աստծու արքայությունը»[38], և դարձյալ՝ «Եթե մեկը չծնվի ջրից ու հոգուց, չի մտնի երկնքի արքայությունը»[39]: Այսպիսով՝ պարզ է, որ յուրաքանչյուրն իր համար պետք է մկրտվի, և ոչ թե մեկը մյուսի փոխարեն:*

*Դարձյալ՝ սերմերի առակով[40] հայտնապես ցույց է տրվում մարմինների հարությունը. թե՝ ինչպես որ սերմը ցանում ես, տարբեր բան չի ստացվում, թեև փառավորապես բազմապատկվում է. ոչ մի դեպքում ցորեն չցանեցիր ու գարի հնձեցիր կամ կորեկ չցանեցիր ու հաճար հնձեցիր, այլ ինչ որ ցանեցիր, այն էլ հնձեցիր. այսպես էլ, ասում է, այն մարմինը, որ մեռավ, նույնն էլ հարություն է առնելու:*

*Դարձյալ՝ երբ առաքյալն ասում է, թե՝ «Մարմինն ու արյունը արքայություն չեն ժառանգում, ոչ էլ ապականությունն անապականություն է ժառանգում»[41], ոչ թե պետք է հասկանալ այն մտքով, ինչպես Մարկիոնն է ասում՝ «Մարմինները, նյութական լինելու պատճառով, հարություն չեն առնում», այլ (պետք է հասկանալ) ուրիշ երկու ձևով:*

*Մեկ այն (ձևով), թե քանի դեռ մարդը մարմնական գործերի ու գաղափարների մեջ է, չնչավոր է և մարմին ու արյուն. և որովհետև միայն ըստ մարմնի է մտածում ու գործում, արժանի չէ երկնքի արքայությունը մտնելու: Ինչպես որ առաքյալը մի ուրիշ թղթում է գրում՝ (դիմելով) հավատացյալներին, թե՝ «Ովքեր մարմնով են, մարմնական բաներ են մտածում[42], բայց դուք ոչ թե մարմնով, այլ հոգով եք»[43]: Երբ գրում էր հավատացյալներին, մի՞թե (նրանց) մի մասը մարմնով էր, մյուսը՝ ոչ: Պարզ է, ուրեմն, որ ամենքն էլ մարմնով էին, բայց ոչ բոլորն էին մարմնի ու հոգու գործերի մեջ:*

*Եվ մի ուրիշ ձևով էլ այն մտքով պետք է հասկանալ, որ մարմինները հարություն են առնում ոչ թե ուռած լեշով ու արյունով, այլ հարությամբ նորոգվելով՝ ապականության ենթակաները անապականություն են ժառանգում: Ինչպես որ այդ մասին (վկայություն) էլ է բերում, թե՝ «Փող պիտի փչվի, և մեռածները, որ քրիստոնյա էին, պիտի հարություն առնեն որպես անապականներ, և մենք պիտի նորոգվենք»[44]:*

*Այսպիսով ցույց է տրվում, որ մարմինները հարություն են առնում*

*Հարությամբ նորոգված ու բոլոր պակասություններից ազատված: Եվ մահը պարտություն է կրում, երբ ապականվածները անապականություն են ստանում, տկարությամբ սերմանվածները՝ զորություն, անարգությամբ ցանվածները՝ փառավորություն: Եվ չկա մարմին, որ հողի մեջ մնա, այլ հոգիները, յուրաքանչյուրն իր մարմինը հագնելով, մի ակնթարթում պիտի կանգնեն ահեղ ատյանի առաջ՝ ոմանք հավիտենական կյանքի, ոմանք՝ դատաստանի ու պատիժների համար*[45]*:*

*1. Տե՛ս* ***«Գիրք Յեսուայ որդւոց Նաւեայ»****, գլ. Ա-ԻԴ:*

*2.* ***Գործք առաք.****, ԺԱ, 6-7:*

*3. Հմմտ.* ***Մարկ.****, Է, 15:*

*4. Տե՛ս* ***Մատթ.****, Թ, 11:*

*5. Հմմտ.* ***Ղուկ.****, ԻԲ, 15:*

*6. Անդ, ԻԴ, 42-43:*

*7. Ակնարկում է Աստվածաշնչի այն հայտնի պատմությունը, որտեղ ասվում է, թե Աբրահամն իր որդի Իսահակի փոխարեն զոհեց Աստծո կողմից ուղարկված խոյը (տե՛ս* ***Ծննդ.****, ԻԲ):*

*8. «Գառ» արտահայտությամբ փոխաբերաբար հասկացվել է Հիսուս Քրիստոսը:*

*9. Տե՛ս* ***Ղևտ.****, Դ, 12:*

*10. Տե՛ս* ***Եբր.****, ԺԳ, 11-12:*

*11. Հմմտ.* ***Սաղմ.****, ԿԸ, 32:*

*12. Հմմտ.* ***Մատթ.****, ԺԲ, 40:*

*13. Հմմտ.* ***Ծննդ.****, Թ, 3-4, նաև՝* ***Ղևտ****, ԺԷ, 11, 14:*

*14. Հմմտ.* ***Գործ առաք.****, ԺԵ, 29:*

*15. Տե՛ս* ***Մատթ.****, ԺԵ, 11:*

*16. Տե՛ս* ***Ա Տիմ.****, Դ, 3-5:*

*17. Անդ, Դ, 5:*

*18. Հմմտ.* ***Ա Կորնթ.****, Ժ, 27:*

*19. «Մակեղոն» նշանակում է «մսավաճառանոց», կամ «սպանդանոց»:*

*20. Տե՛ս* ***Ա Կորնթ.****, Ժ, 25:*

*21. Հմմտ.* ***Հռովմ.****, ԺԴ, 21:*

*22. Հմմտ.* ***Ա Կորնթ.****, Ը, 13:*

*23. Հմմտ.* ***Հռովմ.****, ԺԴ, 21:*

*24. Անդ, ԺԴ, 2:*

*25. Տե՛ս* ***Ա Տիմ.****, Դ, 4-5:*

*26. Մարկիոն (85-180), կրոնա-փիլիսոփայական հերետիկոսական մարկիոնական ուսմունքի հիմնադիր: Մարկիոնականության հիմնական սկզբունքները տեղ են գտել Մարկիոնի «Հակաթեզեր» երկասիրությունում (չի պահպանվել): Ժամանակի ընթացքում Մարկիոնականությունն աստիճանաբար ձուլվել է մանիքեականությանը:*

*27. Մանին (216-276) հիմնադիրն է մանիքեական աղանդավորական շարժ-*

*ման, որը ծագել է III դ. 30-40-ական թվականներին Պարսկաստանում: Աղանդը լայն տարածում է ստացել նաև Հռոմեական կայսրության տիրապետության ներքո գտնվող երկրներում, թափանցել Հայաստան: Զգալի ներգործություն է ունեցել պավլիկյանների գաղափարաբանության ձևավորման բնագավառում: Մանիքեականության գաղափարները գլխավորապես տեղ են գտել Մանիի «Շապուրական», «Կենդանի Ավետարան» և այլ ստեղծագործություններում:*

*28. Մծղնեականների մասին տե՛ս սստ, էջ 440, ծան. 1:*

*29. Տե՛ս **Մատթ.**, ԺԹ, 12:*

*30. **Ծննդ.**, Բ, 24-25:*

*31. **Մատթ.**, ԺԹ, 6:*

*32. Հմմտ. **Ա Կորնթ.**, ԺԵ, 50:*

*33. Տե՛ս **Փիլիպ.**, Ա, 23:*

*34. **Ա Կորնթ.**, ԺԵ, 53:*

*35. **Բ Կորնթ.**, Ե, 10:*

*36. **Ա Կորնթ.**, ԺԵ, 4:*

*37. Անդ, ԺԵ, 29:*

*38. **Յովհ.**, Գ, 3:*

*39. Հմմտ., Անդ, Գ, 5:*

*40. Սերմերի առակը տեղ է գտել Ավետարաններում, տե՛ս **Մատթ.**, ԺԳ, **Ղուկ.**, Ը, **Մարկ.**, Դ: Առակը հիշատակվում է նաև **Ա Կորնթ.**, ԺԵ:*

*41. Հմմտ. **Ա Կորնթ.**, ԺԵ, 50:*

*42. Հմմտ. **Հռովմ.**, Ը, 5:*

*43. Հմմտ. **Հռովմ.**, Ը, 9:*

*44. Հմմտ., **Ա Կորնթ.**, ԺԵ, 52:*

*45. Տե՛ս **Յովհ.**, Ե, 28-29:*

## ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑԻՆ ԱՂԱՆԴԱՎՈՐԱԿԱՆ ՈՒ ՀԵՐՁՎԱԾՈՂԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ԴԵՄ ՊԱՅՔԱՐԻ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՇԽԱՐՀԻ

### *Գիրք Գ*

***Գլ. Ը.*** *Նեստորի[1] ու Մաքսիմիանոսի[2] չար ու դառնարմատ աղանդը այժմ երևաց մեր մեջ անօրեն դարձած Ներսեսի[3] միջոցով, որը Սուրբ Հոգու ներողամտությամբ կարգվեց Աղվանքի [հոգևոր] առաջնորդ, բայց խորամանկությամբ դարձավ հավատակործան ու մեր հոգիների մոլորեցուցիչ: Որովհետև մեր առաքելաքարոզ (առաքյալների նման քարոզող) հայրերի փրկարար ավանդությունը, որ անարատ ձեռքերով հաստատել էին եկեղեցիներում, նա անարժան ձեռքերով դուրս մղեց. բարուն նախանձախնդիր, ուղղափառ հավատի ավան-*

*դապահ եպիսկոպոսներին ցաքուցրիվ արեց. ոմանց բամբասանքներով հալածեց օտար երկրներ, ոմանց վշտի ու նեղության մեջ նետեց, պատվական աթոռը խորտակեց և ճգնավոր կրոնավորների խմբերը խառնաշփոթության մեջ գցեց: Նրա կողմից Քրիստոսի սուրբ մարմնի պատվական անդամները ցաքուցրիվ դարձվեցին, իսկ Սիոնի որդիները խաբեությամբ բոլորովին մոլորվեցին: Մեր Սուրբ տաճարը փոխվեց ապականության, ըստ Երեմիայի ողբերգության, մեր սրբության փառքը վերացավ, և չորեքկուսի տիեզերքում մեր պարծանքների պարծանքը մարելով կործանվեց[4]:*

*Բայց հենց այստեղ մեր Փրկիչ Աստծուն թող օրհնություն ու գոհություն լինի, որ թույլ չտվեց մարդկության թշնամուն մինչև վերջ առաջ գնալ: Եվ գթալով մեր տկարության վրա, ողորմելով իր ժողովրդին՝ մեզ մոտ ուղարկեց քեզ՝ պատվական հայր Եղիայիդ[5], Աստծու շնորհիվ Հայոց կաթողիկոսիդ, Սուրբ Գրիգորին զուգաթոռ սուրբ ու ճշմարիտ մարդուդ, ձեր եպիսկոպոսներով ու վարդապետներով, որոնք են՝ Խորխոռունյաց եպիսկոպոս Սիմոնը, Ամատունյաց եպիսկոպոս Սարգիսը, Ռոստակի եպիսկոպոս Սարգիսը, Հովհաննես վարդապետը, և ձեր ուրիշ շատ աշակերտներով եկաք-հասաք մեր Պարտավ մայրաքաղաքը ու ձեր քաղցրուսույց քարոզությամբ մեր միջից չարը վերացրիք և, հիշելով մեր առաջին հայրերի ավանդությունները, վերանորոգեցիք մեր հայրապետության աթոռն այն սրբասուն մարդու ձեռքով, որի ճշմարիտ լինելուն մենք երաշխավոր ենք: Այդ պատճառով մենք բոլորս՝ Աղվանքի Սիմոն կաթողիկոսը, Կապաղակի Հովհաննես եպիսկոպոսը, Հոշո Սիմոն եպիսկոպոսը, Ամարասի Սահակ եպիսկոպոսը, Ներսմիհրի վանքի տանուտեր սրբասեր Քշիկը աղանդից զերծ մնացած իր ամբողջ միաբանությամբ, Գտավանքի տանուտերը, Կատարո վանքի տանուտերը, Հովսեփի վանքի տանուտերը, Կաղանկատուքի Դավիթ վանականը, Տկոակերտի Պետրոս վանականը, Աղածոբի Պողոս վանականը, Աղվանքի իշխան Քրիստոսասեր Շերոն, Աղվանքի սպարապետ Ջվանքոն, Վարդան պատրիկն ու նրա եղբայր Գագիկը, Հրահատյան Բաբը, Վարազմանյան Վախթանգը, թագավորական տոհմից Քարոյան Պատրիկը, Վարազհոհանյան Վահանը, Անաստույան Թեոդորոսը, Ռոստոմ Վարազ Աքոյանը, Զարմիհր Վարազ-Քուրդաքյանը՝ թագավորական ցեղից, Մահմեդ[6] Շերոյանը և այս երկրի բոլոր մյուս ազատները օրհնեցին և հոգևորականների ու աշխարհականների միաբանությամբ ընդունեցինք մեր առաքելական հավատը, որը նախ Սուրբ Եղիշայից հիմնադրվեց, ապա Սուրբ Գրիգորիսից հաստատվեց և մինչև այժմ իր ուղուց չէր շեղված: Բայց երբ փորձանքը վրա եկավ, Աստված*

*հասցրեց իր օգնությունը քո՝ Սուրբ Գրիգորի հաջորդիդ ձեռքով, Գրիգորի, որի ուղղափառությանը աշակերտել ենք և այժմ կաշակերտենք քեզ՝ Հայոց կաթողիկոս Տեր Եղիայիդ, որ վրեժխնդիր եղավ արդարության թշնամու նկատմամբ:*

*Եվ արդ՝ մենք բոլորս նզովում ենք բոլոր հերձվածողներին՝ առաջիններին, միջիններին ու վերջիններին, Նոմինոսին ու նրա ուսուցիչ Արիոսին, Վաղենտինոսին, Ապողինարին, Մանիին, Մարկիոնին, Եվտիքեսին, Նեստորին, Դիոդորոսին, Թեոդորիտոսին, Քաղկեդոնի ժողովը, Լևոնի տոմարը, Մաքսիմոսին ու նրա աշակերտներին, որոնց հետ նզովեցինք նաև մեր եղկելի Ներսեսին, որն ընդունեց երկաբնակ աղանդը, և նրանց, որոնք հետևում են այդ աղանդին: Սույն կանոններն Աստծու և ձեր սրբության առաջ հաստատեցինք, որպեսզի սրանից հետո մեզնից ոչ ոք չհանդգնի մեր ու ձեր հայրերի ավանդությունից դուրս գալ: Իսկ եթե մի որևէ հանդուգն գտնվի, որը կրկին մոլորություն մեջտեղ գցի, թող այդպիսին նզովվի Սուրբ Երրորդությունից ու մեր միաբանությունից, Սուրբ Հոգու շնորհներից անմաս մնա և խոստացված արքայությանը չհասնի: Իսկ եթե եպիսկոպոսներից մեկը այդպիսին կլինի, պատվազուրկ կարվի և բարձր աթոռից կընկնի, իսկ եթե քահանաներից լինի, թող նույնը կրի, եթե կրոնավորներից մեկը լինի, նզովվելով կհալածվի, իսկ եթե աղնվականներից է, կհեռացվի եկեղեցուց, չի թույլատրվի ընկերների հետ շփվելու, մինչև որ չուղղվի: Նույնպես և Աղվանքի կաթողիկոսների ձեռնադրության համար այսպես սահմանեցինք. քանի որ մի կարճ ժամանակ մեր կաթողիկոսները մեր եպիսկոպոսներից էին օծվում, բայց որովհետև մեր երկիրը սխալ գործ բռնեց և հերձվածող դարձավ, դրա համար Աստծու և ձեր հայրության առաջ պայմանավորվեցինք, որ Աղվանքի հայրապետության ձեռնադրությունը մեր երկրի միաձայնությամբ Սուրբ Գրիգորի աթոռի միջոցով լինի, ինչպես որ էր Սուրբ Գրիգորից սկսած, որովհետև քրիստոնեությունը մենք այնտեղ ընդունեցինք և ճշմարտությամբ գիտենք, թե այն, ինչ դուք եք ընտրում, Աստծուն և մեզ հաճելի է: Այս պայմանից ոչ ոք իրավունք չի ունենա դուրս գալ կամ այլ ձևով վարվել: Իսկ եթե այսպես չլինի, անվավեր ու փուչ կլինի, և այդ ձեռնադրությունն ընդունելի չի համարվի: Արդ՝ նրանք, որոնք Աստծու երկյուղով մեր սահմանադրության կանոնները կկատարեն, Սուրբ Երրորդության ու Աստծու բոլոր ուղղափառ ծառաներից կօրհնվեն. իսկ եթե որևէ մեկը ընդդիմանալով շեղվի այս ճշմարտությունից, ով էլ որ լինի, ինքն է Աստծուն պատասխան տալու:*

*Այս թուղթը գրվեց միաձայնությամբ և Աստծու միջնորդությամբ երկու կողմերի միջև հավատի հաստատուն ու անշարժ լինելու հա-*

*մար՝ արաբների ութսունհինգ և հայոց հարյուր քառասունութ թվականներին, հրոտից ամսին[7]: Կնքվեց կամքով ու մատանիներով մեր, որոնց անունները գրված են վերևում:*

*1. Խոսքը Կ. Պոլսի պատրիարք Նեստորի (428-431) մասին է, որը հիմնադիրն ու առաջնորդն է համաշխարհային հերետիկոսական ուսմունքներից նեստորականության: 431 թ. Եփեսոսի ժողովը նզովել է Նեստորին և նեստորականությանը: 506 և 554 թվականներին Դվինի եկեղեցական ժողովները նույնպես նզովել են Նեստորին:*

*2. **Մաքսիմիանոս** – Քաղկեդոնականության երկկամության պարագլուխներից Մաքսիմոս Խոստովանողն է (582-662):*

*3. Ակնարկում է Աղվանից Ներսես-Բակուր կաթողիկոսին:*

*4. **Երեմիա**, ԺԱ, 15:*

*5. Այսինքն՝ Հայոց Եղիա Ա Արճիշեցի կաթողիկոսին:*

*6. Բնագրում՝ «Մահմատ» է (տե՛ս **Մովսես Կաղանկատվացի**, Պատմութիւն Աղուանից աշխարհի, քննական բնագիրը և ներածությունը՝ Վարագ Առաքելյանի, Երևան, 1983, էջ 300):*

*7. Բնագրային ակնհայտ աղճատում է. քանզի հիջրայի 85 թվականը = է Փրկչական 707 թվականին, իսկ Հայոց 148 թվականը = է 699 թվականին: Ուսումնասիրողները հավանական թվական են համարում 704-705 թվականը:*

## ԱՂՎԱՆԻՑ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ ԱՂԱՆԴԱՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

***VII դարի սկզբներին աղանդավորական շարժումները, այդ թվում և պավլիկյան, բուռն վերելք էին ապրում: Արևմտյան Հայաստանից պավլիկյանները մուտք են գործում նաև Արևելյան Հայաստան և հասնում մինչև Աղվանք: Շարժման բուռն թափը և ծավալը ստիպում են արևելահայ եկեղեցական և աշխարհիկ տերերին միջոցառումներ մշակել՝ այն ճնշելու, արմատախիլ անելու ուղղությամբ: Այդ ընագավառում մասնավորապես հայտնի են Հայոց հայրապետ Հովհան Գ Օձնեցու ջանքերը: Ավելի վաղ միջոցառումների համակարգ էին մշակել Աղվանից տերերը՝ հրավիրելով եկեղեցական հատուկ ժողով, որը հայտնի է «Աղվանից ժողով» անունով:***

***Աղվանից ժողովը հրավիրվել է Պարտավ քաղաքում 702-705 թվականների միջև: Ժողովի հրավիրման նախաձեռնողներ են եղել Աղվանից Միքայել կաթողիկոսը (702-737), Աղվանից իշխան և Գարդմանից տեր ապոհյուպատ պատրիկ Շերոն և սպարապետ Վարազ-Գրիգոր պատրիկը:***

***Աղվանից ժողովի որոշումները տեղ են գտել Սամուել Անեցու «Հաւաքմունք ի գրոց պատմագրաց» երկասիրության (Վաղարշա-***

*պատ, 1893) հավելվածում, էջ 286: Ստորև բերվող հատվածն աշխարհաբար է թարգմանել Ա. Գ. Աբրահամյանը:*

### *Կանոն և սահմանադրություն Աղվանից ժողովի, որ տեղի ունեցավ Եղիա Հայոց կաթողիկոսի[1] ժամանակ, որ 31-րդ գահակալն էր Սուրբ Գրիգորից հետո*

*Այն ժամանակ, երբ Միքայել քահանան կարգվեց քահանայապետության պաշտոնին, խոսեց իր աթոռակիցների հետ, որոնք են՝ Հովհաննես Կապաղակի եպիսկոպոս, Սահակ Ամարասի եպիսկոպոս, Եղիազար Հոչո եպիսկոպոս և Իսրայել Մեծկվանից եպիսկոպոս, Զաքարիա Մեծիրանց եպիսկոպոս և Հովակիմ Գարդմանա եպիսկոպոս՝ երկրի բարեկարգության և հավատքի ուղղափառության համար:*

*Արդ ես՝ Շերո, ապահի-պատրիկ՝ Գարդմանա տեր և Աղվանից իշխան[2], Վարազ-Գրիգոր պատրիկ՝ Աղվանից սպարապետ, Բաբ ի Շահրփերողյան, Զարմիհր՝ Վարազ-Քուրդաքյան տոհմից, Թեոդորոս՝ Վստամ-Հարեմանյան, Ռոստոմ՝ Վաչագան-Վարազաքյան-Հոնսատահյան տոհմից, Վահան՝ Վարազվահանյան տոհմից, Սմբատ՝ Քորոյան տոհմից, Մահումատ՝ Ղանքարյան տոհմից, Գրիգոր՝ Ռահատյան տոհմից, Պատրիկ՝ Քամղիտյան տոհմից, Արևքո՝ Վարոքյան տոհմից, Շիրո՝ Մերդանշահյան տոհմից, Վարդիչ հյուպատոս՝ Թամդիկյան տոհմից, Հայոց ՁԸ թվականին[3] կանոնեցինք այսպես, որ երբ, դուք միջոցներ ձեռնարկեք քաղքեդոնական աղանդի և կամ Մայրագոմեցու[4] և կամ պավլիկյանության[5] դեմ, ինչպես և խառը ամուսնությունների դեմ, ինչ էլ որ լինի, ոչ ոք իրավունք չունի դուրս գալ ձեր հրամանից, եթե մեկը դուրս գա, Աստծուց թող դատապարտված լինի, և դուք իշխանություն ունեք ըստ ձեր կամեցողության դատելու, և ոչ ոք իրավունք չունի օգնելու (դատապարտվածներին):*

*Այս պայմանը, որ մենք կարգեցինք, թող հաստատուն մնա: Կնքեցի այս գրությունը ես Շիրո ապահի պատրիկ, Գարդմանից տեր և Աղվանից իշխան՝ բոլոր ազատների հետ միասին:*

*1. Նկատի ունի Եղիա Ա Արճիշեցի կաթողիկոսին (703-717):*

*2. Շերոն իշխանական գահ էր բարձրացել 699 թվականին:*

*3. Հայոց ՁԸ թվականը համապատասխանում է 639-640 թվականին: Ակնհայտ է, որ գործ ունենք գրչագրական աղավաղման հետ:*

*4. Խոսքը նշանավոր աստվածաբան ու դավանաբան Հովհան Մայրագոմեցու (մոտ 572-650) մասին է:*

*5. Բնագրում՝ «պայլի կենաց»: Ուսումնասիրողներն իրավամբ կարծում են, որ սա «պաւղիկեանք» բառի աղավաղված ձևն է: Աղվանից սույն ժողովի որոշման*

*մեջ պավլիկյանների անվան հիշատակումն առաջինն է պատմագրության մեջ (ավելի մանրամասն տե՛ս **Р. М. Бартикян**, Источники для изучения истории павликианского движения, Ереван, 1961, с. 31, 108)։*

## ՀՈՎՀԱՆ ՕՁՆԵՑՈՒ ԿԱՆՈՆՆԵՐԸ ՄԾՂՆԵՈՒԹՅԱՆ ԴԵՄ

### ԿԱՆՈՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

***Հատ. Ա, էջ 534-535***

***Գլ. ԻԹ.*** *Չպետք է բոլորովին անտարբեր գտնվել և հաղորդություն ընդունել հերձվածողների հետ, այլ պետք է խորշել նրանցից. չպետք է մասնակցել նրանց, հոգեկան և մարմնական սեղաններին, այլ պետք է պատկառող և փափագող լինել միաբանական ուղղափառ ավանդներին։*

***Գլ. ԼԲ.*** *Չպետք է չարաղանդ մծղնեականներին, որոնք կոչվում են պավլիկյաններ[1], օթևանելու տեղ տալ կամ միաբանել նրանց, խոսակցել նրանց հետ, երթևեկություն անել, այլ պետք է բոլորովին հեռանալ նրանցից, գարշել և ատել նրանց, որովհետև սատանայի որդիներ են և հավիտենական հրոտի լուցկիներ. նրանք հեռացել են Արարչին սիրելու կամեցողությունից։*

*Եթե լինի մեկը, որը հարի նրանց, սիրալիրություն և բարեկամություն անի նրանց հետ, պետք է այդպիսիներին խոշտանգել և ծանր պատիժների ենթարկել։ Իսկ եթե նա վերստին այդ հանցանքում գտնվի, հրամայում ենք ազատել, դուրս վտարել (համայնքից) իբրև Քրիստոսի եկեղեցու անդամության ախտակիր ժանգ, որպեսզի «դառնության արմատը ծավալվելով չնեղի, նրանից շատերը չպղծվեն»[2]։*

*1. Միջնադարյան հեղինակների մոտ հաճախակի են մծղնեականներին և պավլիկյաններին միմյանց հետ չփոթելու հանգամանքը։*

*2. **Եբր.**, ԺԲ, 15։*

## ՀՈՎՀԱՆ ՕՁՆԵՑԻՆ ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

***Հովհան Օձնեցու բազմաժանր ժառանգության լավագույն երկասիրություններից է «Ընդդէմ պաւղիկեանց» ճառը։ Այստեղ կաթողիկոս-մատենագիրը սպառիչ փաստարկներով հերքել է պավլիկյանների գաղափարները և պաշտպանել Հայոց եկեղեցու ուղղափառությունը։ «Ընդդէմ պաւղիկեանց» ճառը լույս է տեսել Հովհան Օձնեցու երկերի ժողովածուում (տե՛ս «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1833, էջ 34-47)։ Ստորև բերված հատվածը աշխարհաբար է թարգմանել Գ. Ա. Մաղոյանը։***

## ԸՆԴԴԵՄ ՊԱՎԼԻԿՅԱՆՆԵՐԻ

*Եթե իր Ընդհանրական Առաջին Թղթում Ավետարանիչ Հովհաննեսն առիթ ուներ ասելու, թե՝ «Բազում նեռեր են եկել աշխարհը, որով կարող ենք իմանալ, որ վերջին ժամանակ[ներն] են»*[1]*,- ապա ի՞նչ պիտի ասենք մենք, որ ոչ միայն նախկինի համեմատ ավելի չար ու բազում նեռեր ենք բերում մեզ հետ, այլև ստուգապես եկել հասել ենք վերջնագույն ժամանակին, ուր հետիններից հետին քարոզիչներն ու վկաներն են. ժամանակների և ժամանակի մարդկանց մասին եմ ասում: Քանզի ահա գտնվեց որոգայթը հավքորսների ցանցի պես իր ժողովրդի մեջ նետված, որպեսզի բռնի մարդկանցից տխմարներին և պարզամիտներին, որ չարիքից չարիք բարձրացան, պատկերամարտությունից [չարժվելով դեպի] խաչամարտություն և քրիստոսատյացություն, իսկ այնտեղից դեպի անաստվածություն և դիվապաշտություն: Այլև խորամանկելով՝ քրիստոսասերների դեմ իրենց խողխողիչ զենքը գտան, դաշնակցեցին բռնակալների հետ՝ իրենց համբակ խմբերով հմտորեն կիրառելով նրանց ստվերագիր, առասպելապատում մատյանները: Որովհետև ում որ ախորժելի եղավ չեղվելով բանսարկուի հետ բարեկամանալը, բոլորովին զարմանալի չթվաց նաև նրա արբանյակների հետ մերձավոր համախոհ լինելը:*

*Եվ իրենց պղծալից չուրթերով հանդգնում են մեր ուղիղ և աստվածավանդ կրոնի լուսավորությամբ նախատել մեզ, կռապաշտներ անվանելով՝ քանզի պաշտում ենք տերունական նշանը, որ աներեր մտքով վերցնելով՝ բոլոր նյութերին համակցեցինք այն հոչակելի նշանը, որ զգոնացնող և պատկառելի է [անգամ] քերովբեների համար, բուժիչ՝ մեր հոգևոր և մարմնավոր ախտերի, [իսկ] դևերի համար՝ ահազդու և զարհուրեցնող: Եվ անհավատության դևի կողմից հիմարացված ու խելագարված՝ մարդացյալ Բան Աստծու կենդանի պատկերի համար անամոթաբար պախարակում են մեզ, մեր դեմ բերելով Սուրբ մարգարեների խոսքերը, որ ասվել են հեթանոսական կռամոլությունը հանդիմանելու համար: Մտքով խավարածները չկարողացան տեսնել մեր աստվածպաշտության և հեթանոսների բազմաստվածության տարբերությունը. մենք Աստծու միակ և միածին Որդու պատկերն ենք պաշտում և Նրա հաղթության նշանը, իսկ հեթանոսներին անհուն ու անթիվ պաշտամունքներով մոլորեցրեց սատանան:*

*Որովհետև հեթանոսներից ոմանք, աչքերի [նայած կողմը] գնալով՝ խաբվեցին և երկնքի ու երկրի տարրերքներից ինչ որ հանդիպեց՝ աստված անվանեցին. աստղերը, լեռները, բլուրները, ծառերը, քարե-*

*րը: Իսկ ոմանք կենդանիների ուժից կամ դժնխությունից ահաբեկվելով և երկյուղելով՝ սկսեցին դրանց պաշտել և աստված անվանել. ինչպես բաբելոնացիների մոտ պաշտվեց վիշապը, եգիպտացվոց մեջ՝ կոկորդիլոսը: Իսկ ովքեր անչափ հոգ տարան վավաշոտ ախտի մասին, նույնաձևաբար ստեղծելով, պաշտեցին արական և իգական անդամները. [ինչպես] մովաբացիները և սիդոնացիները՝ Քամովսին և Աստարովթին: Մյուսներն ընտրելով աստվածացրեցին տարերքներից օգտակարներն ու պիտանիները. ինչպես պարսիկներն ու մարերը՝ հուրը, ջուրն ու հողը. ընդհուպ մինչև նրանց հաճո թվաց մեռնելիս իրենց մարմինները գազաններին և թռչուններին մատնել, քան թե ծածկել հողով և նեխությամբ անպատվել հիմարաբար պաշտված [հողը]: Իսկ հեթանոսներից ոմանք, տեսնելով արյուն և թարախ ծծողներին, ախտաբույժ և ցավահալած համարելով, աստված անվանեցին, ինչպես գազացիները և ակկարոնացիները՝ տզրուկներին, մեղուներին և մժեղներին: Նրանց մի մասը պատվելով պաշտեց մնացյալ [կենդանի]ներին պարտության մատնող գազաններին, որոնց հաղթությունն իրենց համար օգնություն [և օժանդակություն] համարեց. ինչպես հյուսիսայինները [պաշտեցին] ձիուն և շանը. մեկին ոտքերի արագաշարժության համար, [ինչի շնորհիվ] հեծյալն ասես թևով թռչելով է հասնում որսի հետևից, իսկ մյուսին՝ գազանների հափշտակությունից տիրոջն ապահովելու համար: Եվ կամ ինչպես սրանց նմանությամբ կատվապաշտությունն է հարգի եղել՝ իրենց կերակուրը ուտելիքի ապականիչներից պաշտպանելու համար:*

*Բայց ասվածից ավելի [մեծ] ամբարշտություն էր հեթանոսների՝ ինքն իրենց երկրպագելու և պաշտելու [սովորությունը], երբ շրջապատողների կողմից մեծարվելով, ինքն իրեն խոնարհվելով հիմարաբար սկսեցին երկրպագել: Մարդիկ, իրար հետ համեմատվելով, եթե ինչ-որ բանով պակաս էին լինում մյուսից, այդ հանգամանքով գերազանցողին արարչության աստիճանի էին բարձրացնում, իսկ իրենց խելակորույս կերպով արարված էին խոստովանում: Այս ձևով քաղդեացիները Տիտանյանին վիթխարի և աշխույժ տեսնելով՝ հասակով վաթսուն կանգուն, իսկ լայնությամբ վեց կանգուն, աստվածային պատվի արժանացրեցին: Եվ սրա խավար չարապաշտությունն ամբողջ տիեզերքը կուրացրեց: Ամեն լեզվի համապատասխանությամբ այլաձևեցին նրա անունը. քուշանները Նեբրովթ կոչեցին, բաբելացիները՝ Բել, փղշտացիները՝ Բահալ, հելլենները՝ Դիոս, պարսիկները՝ Որմիզդ, հայերը՝ Արամազդ: Եվ սրա բարձրահասակության նման հիացան նաև ուրիշների այլազան քաջահաճություններով և*

*աստվածներ անվանեցին. Կռոնոսին՝ ինքնավստահորեն կռվելու, Արեսին՝ արի լինելու, Հերմեսին՝ քաջախոսնակ ճոռոմաբանության, Զևսին՝ դեմառդեմ չկռվող հակառակորդների հետ զուգախառնության, մյուսներին՝ այլ բնածին կարողությունների համար. նրանց անուններով և պատկերներով կուռքեր քանդակելով՝ աստվածներ անվանեցին: Եվ երբ գարշելիների անուններով վատթարագույն կուռքերը կանգնեցվեցին, չարասեր և ճշմարտատյաց դևը, դրանց մեջ մտնելով, դարանակալեց և տեղադրված անդրիների շնորհիվ իր կողմն էր ձգում և երկրպագություն ընդունում: Եվ սրա արդյունքում դից երկրպագությամբ զբաղվողները ոչ միայն տարրերն էին պաշտում, այլ նաև դևերին՝ դառնալով դիվապաշտ և իրենց նվիրելով դրանց ծառայությանը: Եվ սպասավորում էին դիվաբնակ և դիվաչունչ կուռքերին ու դիվցագուն[2] անվանելով՝ մարդկային բնությունից վեր էին դասում:*

*Եվ արդ, քանի որ բացահայտ և քողազերծելով պարզեցինք կռապաշտների հիմարությունը, չարժե այլ անուններով [հիշել] նրանց, ում մասին որ հնչում է խոսքս, որովհետև միևնույն [գործին] նրանց ծառայելը, անվանակոչվելու կարոտ չէ: Արեգակին երկրպագելով՝ լծակցում են նրա երկրպագուներին՝ պաշտոն մատուցելով մկնորսներին, մղվելով խորխորատն են ընկնում նրանց հետ, ովքեր ձիերին և շներին իբրև աստված ընտրեցին, կամ զազանասնույց գետն են ընկղմվում եգիպտացիների հետ: Խավարա[մտությամբ] կատարելով իրենց խավարային խայտառակությունը՝ վտանգելով իրենց խոհերն իջեցնում են պարսկական մայրապականության տեղերը: Եվ կամ ընկնելով՝ աղերսում են նույն Քամովսի և Աստարովթի գարշելի կուռքերին: Հանեսի ու Համբեսի հետ բարբանում են կայծակնահան դևի գեհենական հուրը և գետնաթավալ և փրփրերախ Ոլիմպիոս լեռան վրա խոնարհվելով երկրպագում են դևին: Մանուկների արյամբ շաղախելով ալյուրը, անօրենությամբ անառակության օրենքն են կատարում՝ խոզերի ձագակերությունից ավելի մեծ անզգամություն գործելով:*

*Ովքեր նրանց դիակները երդիկներին և տանիքներին բարձր և երկնահայաց դնելով՝ երդվում են մեկը մյուսին ասելով՝ «Բարձրյալը գիտե»: Իսկ կամենալով աղաչել արեգակին՝ ասում են. «Արևի՛կ, Լույսի՛կ»,- և Մանեի ու Սիմոնի կախարդի մոլորության պես ծածկաբար կանչում են օդային և վերևներում շրջող դևերին: Նույն կերպ կնոջ առաջնածին մանկանը ձեռքերով իրար են քաշում և չարամահ սպանում: Եվ նրան, ում ձեռքում, հոգին սպառելով, սատկեց, աղան-*

*դապետ են կարգում և պատվով մեծարում: Եվ խոստովանում են՝ յուրաքանչյուրի անվամբ [առանձին] երդվելով. «Երդվում ենք,- ասում են,- միածին Որդով»: Եվ դարձյալ. «Վկա է Նրա փառքը, ում ձեռքն ավանդեց Իր Հոգին միածին Որդին»:*

*Այսպես՝ տեսակ-տեսակ խաբկական խոսքերով ծածկում են իրենց անձերը և հավատացյալներից անգետներին իրենց կողմն են քաշում: Եվ ինչպես գորտերն են իրենց մարմինը լիճը սուզելիս՝ բերանով անմիջապես ձայն հանում՝ միաժամանակ և՛ լինելով, և՛ չլինելով, այնպես և այս հիշյալներն են՝ տղմասեր և ժանտագործ. իրար մոտ անպատկառաբար չեն թաքցնում պղծությունը, կարծելով, թե ստահոդ խաբեությամբ մեզանից կթաքցնեն: Չգիտեն, թե ինչպես հոտերն է անհնար ծածկել, որովհետև բուրմունքը ինքնաբերաբար հասնում է հոտոտելիքին, նույն կերպ նաև գործերն են, համբավի հողմով քշվելով, բախվում լսելիքին: Սակայն անիմանալի է նրանց մեջ անտառացյալ բազմազան և բազմախուռն չարությունը, որովհետև սատանայական ուսմունքը մի տեղ հավաքելով՝ նրանց ամբարշտության հեղեղները ծովացան:*

*Պիղծ պավլիկյանության[3] հին փշրանքները, որ Ներսես կաթողիկոսի[4] կողմից խրատվեցին, սակայն չիմաստնացան, նրա մահվանից հետո խուսանավելով պահ մտան մեր աշխարհի տարբեր ծագերում: Եվ բաժանվելով՝ եկան, նրանց հարեցին Աղվանից կաթողիկոսների կողմից կշտամբված որոշ պատկերամարտներ, որովհետև ճշմարտությունից վրիպածը ցանկանում է իր նմաններին հասնել: Եվ քանի դեռ դերաքրիստոսի կարապետը զորավիգ չէր եղել նրանց, վախենում և սարսում էին քրիստոնյաների գերապանծ կրոնից, մանավանդ որ անզգամն ինքն է իրեն դատապարտում՝ տանջվելով իր խոհերից: Սակայն երբ կարծեցին, թե հասել են ինչ որ մեծ, նոր հնացյալի և անորոշի, այնժամ իրենց դարաններից և որջերից դուրս սողացին և ժողովրդի մեջ բնակվելով՝ համարձակվեցին խեղդող ջրերի մոտ հասնել և Ջրկա անվանել: Միասին ընթանալով՝ կուտակվեցին բոլոր տեղերում՝ ինչպես անգղերը նեխող լեշի մոտ: Եվ հանդգնեցին իրենց աղտաշատ անունը կպցնել նրանց, ովքեր հույսով ամուր բռնվել էին երկնային բարիքներից, [նրանց], որ մարդկանց միջից ընտրվելով՝ աստվածային բնակությանն էին արժանացել, նրանց, որ երկրի վրա երկնայինների[5] վարքով են ապրում: Եվ դևի հայհոյությամբ անզգամանալով՝ անամոթաբար այսպիսիներին վերագրեցին իրենց ամբարշտության մաղձը և կռապաշտ անվանեցին:*

*Չեմ նվաստանում այն կոչմամբ, որով ենթադրում են, թե ան-*

*պատվում են, որովհետև խսկապես կռում ենք, քանդակում և տաշում ենք, այդպես կանգնեցնելով մեր աստվածպաշտության համար անհրաժեշտ եկեղեցիները, սեղանները, խաչերն ու պատկերները: Եվ ոչ թե նրանց պես ենք և պաշտամունքակից հեթանոսներին, որոնց մեհյանները կառուցվելով՝ [դևերի] ընդունարան են դառնում, այլ բարեպաշտների եկեղեցիները աղոթքի և խնդրանքի տաճարներ են և հավաքատեղի նրանց համար, ովքեր կամենում են Աստծուն մերձենալ, որի համար և Աստծու տաճարն ու կուռքերի մեհյանը իրարից խիստ տարբեր են: Բացի այս՝ նրանց ձեռակերտներն ինչ-որ ախտից սկիզբ առնելով կանգնեցին, ինչպես որ սկզբում ասացի, և ամեն ախտի դև ներս մտնելով՝ կուռքերի մեհյանն իր բնակարանը դարձրեց: Եվ այս է պատճառը, որ մարգարեն ասում է, թե՝ «Հեթանոսների բոլոր կուռքերը դևեր են»[6]. կա՛մ բարկության դևն է, կա՛մ ագահության, կա՛մ սպանության: Մինչդեռ հավատացյալների եկեղեցիները աստվածասիրության փափագով կառուցվեցին, որի համար և ներս գալով Աստված դադար է առնում, իսկ երկնային հրեշտակները, հավատացյալների հետ դասակցելով, պարում են: Որովհետև ուր որ հայտնվում է Աստված, այնտեղ [Իր] շուրջն է խմբվում հրեշտակների բազմությունը, որ սպասավորի:*

*Դրանից բացի՝ կռապաշտներն անշունչ նյութից ինչ-որ մեռելների նմանությամբ քանդակներ են ստեղծում, որի պատճառով թե՛ նախատիպի, թե՛ պատկերի հույսից է զրկվում պատկերագործը: Իսկ մենք կենդանի և կենդանարար Քրիստոսին ենք ստեղծում ամեն նյութից՝ մարդու նմանությամբ, և այս իսկ պատճառով մեր հույսը հաստատուն է, որովհետև. «Ով հավատում է Ինձ,- ասաց Նա,- մահ չի տեսնի, թեպետ և մեռնի, կապրի»[7]: Եվ ինչպես Եսային է ասում. «Ո՛վ Տեր Աստված Իսրայելի, երկրի ծայրերից հրաշալի օրհնություն լսեցինք. «Հո՛ւյս բարեպաշտին». և թող ասեն. «Ինձ համար է իմ խորհուրդը, իմ խորհուրդն ինձ և յուրայիններիս համար է»[8],- ասել կուզի՝ ձեռաստեղծ արվեստի շնորհիվ երաշխավորվում է առաջիկա հույսի խորհուրդը՝ անհատի անձին և յուրայիններին: Իսկ նրանց համար ասված է. «Կուռքերի նման կլինեն և դրանց արարողներն ու հուսացողները»,- նաև թե՝ «Թո՛ղ խայտառակվեն բոլոր նրանք, ովքեր երկրպագում են կուռքերին և պարծենում իրենց արձաններով»[9]: Եվ յուրաքանչյուր դև իր ախտին համապատասխան պաշտամունք է պահանջում նրանցից: Ինչպես, օրինակ, գրված է պոռնկության դևի մասին. «Նրանք մտան Բելփեգոր և օտարացան ամոթահար լինելով. գարշելիները դարձան սիրելիներ»[10]: Սպանության դևի*

*մասին ասվում է. «Իրենց որդիներին ու դուստրերին զոհեցին դևերին և անմեղ արյուն թափեցին»[11]: Արբեցության դևի համար ասված է. «Գինի և արբեցություն կաթեց»[12]: Տարրատիության դևն ստիպում է իրեն հնազանդվողներին, որ հանդիպում են գեղեցկակերպ և բարեձև տարրերի, երկրպագել, ինչպես և սովորել են երկնքի տիկնոջից կարկանդակ վերցնել և նվերներ ընծայել արեգակին: Նաև երկրի վրա սովորեցնում է փայտերին աղաղակել. «Դու ես իմ հայրը»,- կամ [գոչելով ասել] քարերին. «Քեզնից ենք ծնվել մենք»: Նաև հրամայում էր լեռների և բլուրների վրա զոհեր մատուցել կաղնիների, կաղամախիների և վարսավոր ծառերի ներքո: Իսկ մեզնից ի՞նչ է պահանջում մեր Տեր Աստվածը՝ իրավացի լինել և արդարությունը գործել, «չարին չարով չհատուցել, այլ չարին բարությամբ հաղթել»,— [որովհետև ասված է]՝ «Խաղաղությո՛ւն արեք, և խաղաղության ու սիրո Աստվածը թող լինի ձեզ հետ»[13]:*

*Աստված մեզ հրամայեց սիրել այսպիսի բաները, իսկ նրանք դևերի հրամանով ատեցին, և ինչից որ մենք հրաժարվում ենք, նրանք մեծարում են: Որովհետև սկզբնաչար և մարդատյաց դևերը կամենում են չարչարվելիս և նեղված տեսնել ոչ միայն նրանց, որ իրենցը չեն, այլ նաև գրգռում են իրենց պաշտողներին, որպեսզի չարարարությամբ և վնասահարությամբ հարձակվեն: Եվ սատանային ծառայելու եկած ենք տեսնում խեղանդամներին ու հոգեհաշմներին, ուժազուրկներին, ապիկարներին, թույլերին և պակասավորներին: Իսկ մեր մարդասեր և բարերար Տերը ոչ միայն ողջերին է առողջ պահում, ինչպես Նրանից ելանք՝ այդպես և [առողջ] մնացինք, այլև բժշկում է ախտաժետներին:*

*Եվ քանի որ մեր մարմնի մեջ ենք գտնվում, չենք կարողանում կապվել աննյութների հետ և հայտնապես մեր դեմ բերել Արարչի մեծությունը, որ անգամ քերովբեների համար է անտեսանելի: Մինչդեռ [մեր] բանական էությունը մշտապես ձգտում է Սկզբնապատճառը տեսնելու և դրա համար որոնում է զգայարաններով, սակայն դրանցով իսկ սահմանափակված՝ ստիպված է լինում ընտրել իր փնտրածը: Եվ քանի որ ստեղծելիս [մարդն] իր կամքին է ծառայեցնում նյութը, իսկ [ստեղծելուց հետո] պաշտելով Տեր է համարում, այնուհետև ագահությամբ կամենում է ավելի շատերին ստեղծել և պաշտել: Մարդիկ այսպես մոլորվեցին և սկսեցին մի իշխանության փոխարեն բազմիշխանությանը ծառայել: Սրանից է, որ բազմանալով՝ տգեղացավ ձևը, իր մեջ արտահայտելով բազում ախտերի և ցանկությունների չաղախը:*

*Մինչև որ պատկերին գթալով՝ Ստեղծողը ստեղծվածի պատկերն ընդունեց, և [Նա], որ սկզբից Իր պատկերով և նմանությամբ էր ստեղծել մարդուն, Ինքը եկավ և այս ժամանակների վերջին ծառայի կերպարանք ընդունեց և մարդկանց նման եղավ, որպեսզի դրա շնորհիվ մյուս անգամ զարդարի հորինված պատկերը՝ գեղեցկագունությամբ և ըստ նախնական աստվածատեսակ նմանության: Եվ այս է [պատճառը], որ մեզ ուսուցանվեց պաշտել մարմնացյալ Բան Աստծու՝ մարդկային կերպարանքով նկարված պատկերը ինչպես և այն հաղթության պատվական Նշանը: Պատկերն ու Նշանը երկրպագելով՝ չեմ երկմտում դրանցում արտացոլված Քրիստոսին երկրպագություն մատուցել. այնքան չեմ նայում երևացողին, որքան մտքովս անց եմ կացնում նրանում կուտակված՝ աչքին անհաս Գանձը: Ու թեև տարբեր ու այլատեսակ են [պատկերներն] ու նյութերը, մի և նույն Զորությունն եմ տեսնում բոլորի մեջ:*

*Մի՞թե երբ քարակերտ կամ ոսկյա խաչ եմ տեսնում, քարի կամ ոսկու վրա եմ դնում հույսս: Սա նրանցն է, որ չնանում են քարի ու փայտի հետ՝ ինչպես ասում է [Երեմիա] մարգարեն, և որոնց մասին Դավիթն ասում է, թե՝ «Հեթանոսների կուռքերը ոսկի և արծաթ են»[14]: Իսկ մենք նյութերից միայն նրանք ենք որոշակիորեն պաշտում, որոնց վրա ձևավորել ենք Քրիստոսի պատկերի նմանությունը կամ Նրա խաչի [ձևը]: Որովհետև երկուսի անունն ու նմանությունը պարտավորեցնող են. Քրիստոսին՝ բնակվել նրանցում, իսկ մեզ՝ աներկբա սրտով մեծարել: Բացի այս՝ Սուրբ Երրորդության սպասավոր քահանայի ձեռքը և խոսքը կանչելով նրանց մեջ է բնակեցնում Զորությունը: Պարգևներն ու պատուհասները մարդկանց մեջ մուտք են գործում հենց այս ձեռքով և խոսքով, սրանցով են բացվում և փակվում երկնային դռները, և սրանց տեղի տալով՝ հնազանդվում են բոլոր տարրերը:*

*Եվ ի՞նչ ավելացնեմ խոսքի և ձեռքի մասին, երբ նույն ինքը Սուրբ Հոգու առհավատչյան է վստահեցնում մեզ, մոտենալ և ապավինել նրանց ինչպես գերազանցի և աստվածաբնակի: Սուրբ յուղի հեղման կապակցությամբ եմ ասում, որով նախկինում ամեն մի քահանայի և թագավորի աստվածային Հոգին մղում էր գործունեության: Եվ ամեն տեղ ու ամենքի համար պարգևաբաշխ Հոգու խորհուրդը այս յուղով է լինում: Օրինակ մեր մարդկային երկտեսակ բնությունը. երկապատիկ նորոգող Սուրբ Հոգին մոտենում է մեզ. նյութականով զվարճացնում է աննյութականը, որովհետև՝ «Յուղը զվարթացնում է»,- ասում է [Դավիթ] մարգարեն: [Եվ յուղն] իրենով զորացնում է մեզա-*

*նում եղած աննյութականը. «Աստվա՛ծ,- ասվում է [սաղմոսում],- Քո զորությամբ զորացրո՛ւ այն, ինչ հաստատեցիր մեր մեջ»[15]: Եվ որպեսզի որևէ մեկին կասկածելի չթվա Նրա ազդեցությունը, նախապես մարմնավոր տեսիլքով իջավ և հաստատվեց Իր ազգակցի վրա, այսպիսի երևմամբ կամենալով ցույց տալ Իր գալստյան առհավատչյան: [Գալուստ], որ աշխարհը չկամեցավ աչքերով տեսածը սրտի համար տեսանելի ճանապարհ դարձնել: Եվ սրա համար է, որ Տերն ասում էր. «Աշխարհը չի կարող ընդունել, որովհետև նրան չի տեսնում և նրան չի ճանաչում, բայց դուք ճանաչում եք նրան, որովհետև ձեզ մոտ պիտի բնակվի և ձեր մեջ պիտի լինի»[16]:*

*Ահավասիկ և մենք՝ առաքյալների խոսքով ամենասուրբ Երրորդության հավատացողներս, փրկության յուղով օծված ենք տեսնում փրկության միջոցները՝ եկեղեցիները, սեղանները, խաչերն ու պատկերները և հավատում ենք, որ նրանց մեջ է գալիս աստվածային Զորությունը, և սրանով իսկ [այս բոլորը] տարբերվում են նմանատիպ ցանկացած նյութից: Զատվում ենք նաև մենք նրանցից, որ պատահական նյութ աստվածային համարելով՝ խաբվում են: Եվ մեր խոսքի ճշմարտացիության նշանն այս է. զորությունները և սքանչելիքները, որ կատարվում են մարդկանց համար, ինչպես և դևերի սարսելու և փախստական լինելու [հանգամանքը]: Ինչպես որ գրված է. «Երկյուղածներիդ նշան Դու տվիր, որ փրկություն գտնեն աղեղից»[17],- որ ոչ այնքան մենք, որքան անհավատները պիտի ըմբռնեին և հիացմամբ հավատքին մոտենային, որովհետև նշանները անհավատների և ոչ թե հավատացյալների համար են, ասում է առաքյալը: Անշունչ նյութերը չեն կարող կենդանի մարդկանց օգնության շնորհ մատուցել, եթե Աստված նրանցում չբնակվի:*

*Եվ տարակուսելով մի՛ գայթակղվիր. ո՛չ լռելով, և ո՛չ ցասմամբ հայհոյիչների և թշնամանողների վրա հարձակվելով, որովհետև Աստծու գործերում [մշտապես] առկա են երկու [հանգամանքները]՝ երկայնամտությունն ու վրեժխնդրությունը: Ո՛չ թե ինչ-որ տեղ, կամ ինչ-որ ժամանակ, դրանցից երկուսով կամ մեկով է [ներկա], այլ կա միշտ և ամեն տեղ դրանցից մեկնումեկով, որի շնորհիվ և ճանաչվում է աստվածային կանխատեսությունը: Եվ չհամառե՛ս անհավատության խորհրդով վայր ընկնելով՝ թե. «Անհնար է, որ Աստված Իրենից գոյացած բոլոր տեսակներում լինի»: [Չի՞ չի՛ր, որ] ասել է. «Ինձնով լի են երկինքն ու երկիրը»,- ինչպես և «Ամբողջ երկիրը լի է Նրա փառքով»[18]: Եվ նրանցով ներգործելու համար Նրա տնօրինական կամքն է հարկավոր և ժամանակի պահանջը:*

*Մովսեսը գավազանով ծովը կիսեց և ամուլ վեմից գետ հոսեցրեց. սա անշունչ փայտի հրաշագործություն չենք համարում, այլ նրանում պահված աստվածային շնորհների: [Հեսուի ժամանակներում] Տապանակը կանգնեցրեց Հորդանան գետը, և այդ նույն [գետ]ը կիսեց Եղիայի մաշկեն վերարկուն: Տապանակով կործանվեցին Երիքովի պարիսպները: [Տապանակը վերցնելով]՝ Ոզան մեռավ Հզորագույնի զորության չնչին կիրառմամբ: [Իսկ երբ փղշտացիները Տապանակը տարան Դագոնի տունը], Տերը թանչքի մատնեց այլազգիներին՝ [ազովտացիներին], և դագոնական բագինը գետին տապալելով՝ փշրեց կուռքերը՝ աստվածպաշտության շավիղ ցույց տալով կռապաշտներին: Մի՞թե անշունչ քարից կերտված պնակիտը կարող էր այսպիսի բան անել, եթե չլիներ Ինքն Աստված, որ ժամանակի պահանջով միավորել էր Տապանակի հետ:*

*Եվ արդ, ինչո՞ւ ցույց տրվեց, որ թե՛ նախկինում, և թե՛ այժմ Աստված կամեցավ լինել բոլոր նյութերի մեջ և դրանց միջոցով մարդկանց կարիքների համար օգտակարագույնը գործել: Ցույց կտանք և այս. մեզ համար պատվելի և պաշտամունքի [առարկա] է այն ամենը, որի մեջ առկա է Աստված: Սակայն այս պարզությամբ ասվածների վրա թո՛ղ չհարձակվեն խոսքից կառչողները, [ասելով]՝ «Եթե ամեն տեղ Աստված կա, ապա ամեն գույք պաշտելի պիտի լինի, ուստի արարողի փոխարեն արարվածներն եք մեծարում»: Քա՛վ լիցի. միայն այն մասը, որ իբրև մի գործիք ձեռքը վերցնելով՝ Աստված Իր բարերար խնամքը կատարեց: Բաբելոնում բազում էին ոսկյա և արծաթյա թանկագին անոթները, բայց միայն աստվածային անոթների համար պատուհաս կրեց Բաղդասար արքան: Դավթի օրերում շատ էին ոսկեզօծ արկղերը, սակայն Դավթի միջոցով միայն Աստծու Տապանակը նվագեց: Քիչ չէին նաև Սողոմոնի ժամանակներում այլևայլ տեղերում կառուցված գեղեցկակերտ տաճարները, սակայն [սաղիմականի] կառուցումից հետո իսրայելյան ժողովուրդը հատկապես այնտեղ հավաքվեց[19] Աստծուն խնդրելու համար: Եվ սրա նմանությամբ՝ ամփոփողները՝ տաճարն ու սեղանը, անպատվության մատնելով նրանցում պարունակված ընծաներին ու ոսկուն պատիվ մատուցողներին Տերն ուսուցանելով՝ ասում էր. «Ով երկրպագում է պարունակվածները, երկրպագում է դրանք ընդունողին»[20]: Ի դեպ կլինի և մեզ նույնն ասել. ով պատվում է Քրիստոսի խաչն ու Նրա պատկերը, պատվում է նույն Իրեն՝ Քրիստոսին, իսկ ով թշնամաբար անարգում է դրանք, Քրիստոսի առջև է մեղք գործում:*

*Եվ խոսքս առաջ ընթանալով այսքանին ձգտեց, որպեսզի պապանձեցնի զրախոսությունները լեզվագարների, որ կռապաշտու-*

*թյուն կոչվածով կամենում են խոտորելով չեղել մեր մտքերը: Որոնց մասին արժե ասել. «Անօրենն անօրինություն կգործի: Բայց դուք ելե՛ք այդ երկրի միջից եւ հեռացե՛ք ու պիղծերին մի՛ մոտեցեք, որովհետև ցանկացած տունկ, որ Աստված չէ տնկել, արմատախիլ կլինի»: Որ և հրավիրվելով կանգնելու են բարձրագույն և ամենազոր բազկի առջև, որ ինչպես արեգակը մի փուշ, կարող է հեթանոսական բույսն այրել և դուրս վանել, իսկ հեթանոսների բնակության վայրերը դարձնել երկրի գազանների և երկնքի թռչունների որջ ու բույն:*

*Արդ մեզ առաջ են[21] կանչում՝ իրար հետ մենամարտող այլազգի գնդի [զինվորի] պես իրար հանդիման կանգնելու. ամբարտավանությամբ մեզ առաջ են կանչում՝ ինչպես ժամանակին գեթացի [Գողիաթը] Դավթին: Այլև [գիշակեր] թռչունների նման մոլեգնած ճախրելով, [հարձակման պատրաստ] օձի լեզվի պես սրելով իրենց թրերը՝ սպառնում են սպանել մեր կենդանացնող հավատքը: Եվ նրանց պատճառով նաև մենք զինազարդվեցինք աստվածային սպառազինությամբ, հեղեղագնաց կենցաղից [հեռանալով]՝ զգաստացանք [և] ամրացանք՝ հոգևոր խորհուրդը պահպանելով: Նաև նրանց խոսքերից կորովագույնն ու հարմարագույնն ընտրելով՝ լիցքավորեցինք մեր իմաստության պարսատիկը և ուղիղ նետելով՝ ջախջախեցինք նրանց չարապաշտության բարձրացած գլուխը: Եվ նրանց սատկեցրինք իրենց իսկ չար խոսքերով՝ ավար առնելով և գերելով Աստծու գիտության վրա խրոխտացած նրանց մտքերը, որ հավասարապես թշնամի են Աստծուն և մեզ: Եվ զուգահավասար թշնամի լինելով երկուսիս՝ մեր [դավանությանը] չեն հավատում, այլ զրպարտելով՝ բամբասում են, [միաժամանակ] ասելով՝ թե մեզ ձայնակից և համախոհ են: Եվ մեզ համար նրանցից [բխող] ամենադժնդակ վտանգն այս է՝ խոսքով դեպի ընկերն են մղում, իսկ ձեռքով քաշում են իրենց կողմը՝ քինախնդրության վերքով սիրտ խարանում, կամենալով գաղտնաբար իրենց միահյուսել, միայն այդ հաղթանակ համարելով, ստելով և նախատելով օտարների լուտանքները չպրտում են մեզ վրա: Իսկ մենք երկուսից՝ [օտարներից և պավլիկյաններից] այնքան հեռու ենք, ինչպես լույսը խավարից, կամ [անհամատեղելի՝ ինչպես] գայլերի ու գառների համակցությունը: Քիչ չէ նաև [օտարների և պավլիկյանների]՝ միմյանց նկատմամբ ունեցած թշնամությունը, որովհետև թե՛ միասին, թե՛ տարանջատ հույժ չարափառ են: [Նրանցից] մեկը մի ճանապարհով է գնում, մյուսը՝ երկրորդ, և անխոտոր կերպով [ընթանում են] դեպի Բանի անհասանելի մարդեղությունը տանող ճանապարհի հակառակ ուղղությամբ:*

*Եվ թո՛ղ այսքանը լինի:*

1. **Ա Թուղթ Յովհաննու**, Բ, 18:

2. Հեղինակը սիրում է իր խոսքի ճշմարտացիությունը հաստատել բառախաղերով՝ Կոռնոս-կոռ[ւել], Արէ[ս]-արի: Այստեղ չենք կիրառել դյուցազուն-ներկայիս գրությամբ կիրառելի տարբերակը, որպեսզի նկատելի լինի՝ դիւաբնակ-դիւաչունչ-դիւցազուն շարքը (Թարգմ.):

3. Բնագրում՝ պայղակենութեան:

4. Խոսքը Հայոց Ներսես Գ Տայեցի (641-661) կաթողիկոսի մասին է:

5. Այսինքն՝ հրեշտակների:

6. **Սաղմոս**, ՂԵ, 5:

7. **Ա Թուղթ Յովհաննու**, ԺԱ, 25:

8. **Եսայի**, ԻԴ, 15-16:

9. **Սաղմոս**, ՂԶ, 7:

10. **Ովսէ**, Թ, 10:

11. **Սաղմոս**, ԾԵ, 37:

12. **Միքիէ**, Բ, 11:

13. **Բ Կորնթ.**, ԺԳ, 11:

14. **Սաղմոս**, ԾԺԳ, 4:

15. Նույնը, ԿԷ, 29:

16. **Յովհ.**, ԺԴ, 17:

17. **Սաղմոս**, ՄԹ, 6:

18. **Երեմիա**, ԻԳ, 24:

19. Նկատի ունի Երուսաղեմի տաճարը:

20. **Եսայի**, ՄԲ, 11:

21. Եղակին փոխվել է ըստ հետագա չարաղրանքի (Թարգմ.):

## ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍԸ ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

***Գրիգոր Մագիստրոսը XI դարի ականավոր գիտնական, մանկավարժ և քաղաքական գործիչ է: Սերում է Պահլավունիների իշխանական տոհմից: Գործուն մասնակցություն է ունեցել իր ժամանակի Հայաստանում տեղի ունեցող հասարակական և քաղաքական իրադարձություններին: Ծառայել է Բյուզանդական կայսրությանը, եղել Միջագետքի կուսակալ:***

***Գրիգոր Մագիստրոսն արտակարգ սեր է ունեցել բնափիլիսոփայության նկատմամբ և ամեն կերպ աշխատել է վերականգնել անտիկ գիտության ավանդույթները հայ իրականության մեջ: Հանրաճանաչ են նրա «Մեկնութիւն քերականության», «Եվկլիդեսի երկրաչափությունը» և այլ երկասիրություններ: Նամակագրական կապերի մեջ է գտնվել ժամանակի աչքի ընկնող եկեղեցական, քաղաքական և գիտական գործիչների հետ:***

***Նրա նամակագրությունը՝ «Թղթեր» վերնագրով, 1910 թ. հրա-***

***տարակել է Կ. Կոստանյանցը՝ Ալեքսանդրապոլում: Այդ հրատարակությունից ստորև բերված հատվածն աշխարհաբար է թարգմանել Ա. Գ. Աբրահամյանը:***

### ***ԹՈՒՂԹ ԿԷ***

*Պատասխան Ասորաց կաթողիկոսի գրության, որը գրված է Գրիգոր Մագիստրոսին այն ժամանակ, երբ նա Վասպուրականի և Տարոնի դուքսն էր: Այն բանից հետո, երբ Գրիգոր մագիստրոսը Հոռմեական երկրում արմատախիլ արեց մանիքեականներին և պավլիկյաններին, խորտակիչ այդ ժողովրդի մնացորդները գնացին Ամիդ՝ Ասորաց կաթողիկոսի մոտ այն հույսով, որ կկարողանան խաբեության միջոցով համոզել նրան: Այդ առիթով նա [Ասորաց կաթողիկոսը] գրություն ուղարկեց Արշակունի Գրիգոր Մագիստրոսին: Ահա այդ գրության բովանդակությունը.*

*...Պավլիկյաններին, որոնք կախարդված են Պողոս Սամոսատցուց, երբ մենք փորձում ենք հարցնել, պատասխանում են, որ «Մենք քրիստոնյաներ ենք»: Ամբողջ Ավետարանը և Առաքելոց գիրքը նրանք բերանացի գիտեն: Իսկ երբ հարցնում ենք՝ թե դուք ինչո՞ւ չեք մկրտվում, ինչպես պատվիրել են Քրիստոսը և առաքյալները, պատասխանում են, թե «Դուք չգիտեք մկրտության խորհուրդը. մեզ պետք չէ մկրտվել, որովհետև մկրտությունը՝ մահ է: Եվ Հիսուսը խորհրդավոր ընթրիքի ժամանակ պատարագելու մասին ոչինչ չի ասել»: Եվ ասում են. «Մենք սիրում ենք Պողոսին, իսկ Պետրոսին անիծում: Եվ Մովսեսը ո՛չ թե Աստծուն է տեսել, այլ՝ սատանային»: Եվ ասում են. «Երկինքը և երկիրը և մարդկային սեռը ամբողջապես սատանայի ստեղծածներն են»: Եվ իրենք իրենց անվանում են քրիստոնյաներ:*

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

***Պավլիկյան շարժման վերաբերյալ գոյություն ունեցող հիմնական վկայությունները պահպանվել են բյուզանդական հեղինակների երկասիրություններում: Դրանք հունարեն բնագրից թարգմանել, ծանոթագրել և ստորև ներկայացրել է Հ. Մ. Բարթիկյանը:***

### *1. ԹԵՈՓԱՆԵՍ ԽՈՍՏՈՎԱՆՈՂ*

***Ծնվել է 752 թ. Կոստանդնուպոլսում: Օծվելով կուսակրոն, նա Պրոպոնտիսի ափին՝ Սիգրիանեի մոտ կառուցել է Ագրոս կոչվող մեծ***

*վանքը՝ դառնալով նրա վանահայրը: Նա կատաղի պատկերապաշտ էր, որի համար հալածվել է պատկերամարտ կայսրերի կողմից, ապա և բանտարկվել: Լևոն V Հայկազնը նրան աքսորել է Սամոթրակե կղզին, որտեղ և 818 թ. վախճանվել է:*

*Իր ընկեր Գեորգիոս Սինկելլոսի հորդորով գրել է. «Ժամանակագրություն» երկասիրությունը, որը շարունակությունն է հիշյալ Սինկելլոսի պատմական երկի: «Ժամանակագրությունը» սկսվում է Դիոկղետիանոս կայսրից (284 թ.) և ավարտվում Միքայել I Ռանգաբե կայսեր թագավորությամբ (811-813): Մինչև VII դարի դեպքերի շարադրության համար օգտագործել է մեզ հասած աղբյուրները: VII դարի սկզբից մինչև 813 թ. պատմության համար Թեոփանեսը բյուզանդական ամենակարևոր և (եթե նկատի չունենանք Նիկեփոր պատրիարքի «Համառոտ պատմությունը») միակ աղբյուրն է, քանզի նրա օգտագործած երկասիրությունները, հավանաբար, պատկերամարտ հեղինակների գրչին պատկանող, ոչնչացվել են: Վերջին ժամանակաշրջանի համար Թեոփանեսն ականատես պատմիչ է:*

*Թեոփանեսի պատմական երկը շարադրված է ժամանակագրական սկզբունքով՝ տարի առ տարի: Հեղինակն օգտագործել է աշխարհի արարչագործության Ալեքսանդրյան թվականը, որի 5493 թ. համապատասխանում է Ք. թ. մեկ թվականին, ի տարբերություն Բյուզանդական կայսրության մեջ տարածում գտած այսպես կոչված Կոստանդնուպոլսի թվականի (5508 = 1):*

*Հռոմի պապի նվիրակ Անաստասիոս Բիբլիոթեկարիոսը 873-875 թթ. Թեոփանեսի «Ժամանակագրությունը» թարգմանել է լատիներեն:*

*Ստորև բերվող Հ. Մ. Բարթիկյանի թարգմանությունը, որը լույս է տեսել «Օտար աղբյուրները Հայաստանի և Հայերի մասին» մատենաշարով (№ 13. «Բյուզանդական աղբյուրներ». Դ. Թեոփանես Խոստովանող, Երևան, 1983), իրականացվել է բնագրի քննական հրատարակությունից՝ Theophanis Chronographia, recensuit Carolus de Boor, vol. I, textum graecum continens, Lipsiae, 1883:*

## ԿՈՍՏԱՆԴԻՆ V [Ա. Մ. 6243]

... Այդ նույն տարին[1] Կոստանդինը[2] Թեոդոսուպոլիսն ու Մելիտենեն գրավեց և հայերին գերի վերցրեց[3]:

## [Ա. Մ. 6247]

... Այդ տարին[4] Կոստանդին կայսրը Թեոդոսուպոլսից ու Մելիտենեից գաղթեցրած հայերին ու ասորիներին վերաբնակեցրեց Թրակիայում: Նրանցից [այնտեղ] տարածվեց պավլիկյանների աղանդը:

### *ՆԻԿԵՓՈՐ I [A. M. 6303]*

*Կայսրը[5] մանիքեցիների (նրանց այժմ պավլիկյան են կոչում)[6] ամենաջերմ բարեկամն էր, նաև Փռյուգիայում և Լիկաոնիայում բնակվող աթինգանների՝ իր հարևանների[7], որոնց բանդագուշակություններից ու արարողություններից բերկրում էր: Ի դեպ, երբ Վարդան պատրիկն[8] իր դեմ ապստամբություն բարձրացրեց Նիկեփորը հենց սրանց հրավիրեց և նրանց հմայություններով է, որ Վարդանին պարտության մատնեց: Կայսրը գլուխը խոնարհած մի ցլի եղջյուրներից մի փոսի մեջ ձողին կապեց և նրա բառաչելու ու գալարվելու ժամանակ փորոտեց, նրա մորթին հակառակ ուղղությամբ պտտվող աղացում աղաց և հմայական խոսքեր արտասանելով, հաղթանակ տարավ: Այդ բանն Աստված թույլ տվեց մեր բազում մեղքերի համար: [Աղանդավորները] նրա իշխանության օրոք սկսեցին աներկյուղ գործել և թեթևամիտներից շատերը նրանց անօրեն վարդապետության զոհը դարձան[9]:*

### *ՄԻՔԱՅԵԼ I [A. M. 6304]*

*... Ամենաբարեպաշտ կայսրը[10] աստվածային մեծ ջերմեռանդությամբ ու սրբազնագույն պատրիարքի[11] և ուրիշ բարեպաշտների խորհրդով մղված, այժմ պավլիկյան կոչվող մանիքեցիներին, Փռյուգիայում և Լիկաոնիայում ապրող աթինգաններին մահապատիժ սահմանեց, բայց չարամիտ խորհրդականների միջամտությամբ, թե իբր նրանք կզղջան, իր որոշումն իրականացնելուց ետ կանգնեց, թեպետև այդ մոլորությամբ բերված մարդկանց համար անհնարին բան է ապաշխարելը: Խորհրդականները տգիտորեն քարոզում էին, թե հոգևորականների համար անթույլատրելի է մահապատիժ առաջարկել ամբարիշտների համար, այդ հարցում նրանք իբր ամեն տեսակետից ոտնահարած են լինում Սուրբ Գիրքը: Բայց չէ՞ որ ծայրագույն առաքյալ Պետրոսը մի ստի համար սպանեց Անանիային ու Սափիրային[12], չէ՞ որ Մեծ Պավղոսն աղաղակում է, թե «նման արարքներ գործողները մահվան են արժանի»[13], և այն էլ լոկ մարմնական մեղքի համար, էլ ինչպե՞ս հակադիր են Սուրբ գրոց նրանք, ովքեր սրով փրկում են հոգեկան ու մարմնական ամենայն աղտեղությամբ լի, դիվապաշտ մարդկանց: Հակառակ բոլորին բարեպաշտ Միքայել կայսրն, այնուամենայնիվ, նրանցից շատերին կոտորեց[14]:*

*1. Այսինքն՝ 752 թվականին:*

*2. Խոսքը Բյուզանդիայի կայսր Կոստանդին V Կոպրոնիմոսի (741-775) մասին է:*

*3. Խոսքը վերաբերում է պավլիկյան աղանդավորներին, որոնց կայսրը գաղթեցրեց Թրակիա:*

*4. Այսինքն՝ 756 թվականին:*

*5. Խոսքը Նիկեփոր I կայսեր (802–811) մասին է:*

*6. Թեև պավլիկյանների և մանիքեցիների միջև կային ընդհանուր գծեր (օրինակ՝ աստվածաբանական դուալիզմը), սակայն նրանց միջև որևէ չոշափելի կապ գոյություն չուներ:*

*7. Աթինգանները աղանդավորական շարժման ներկայացուցիչներ էին, որոնք տարածվեցին հատկապես Նիկեփոր I կայսեր տարիներին:*

*8. Վարդան պատրիկը՝ մականվանյալ «Թուրք», հայազգի նշանավոր զորավար էր, Անատոլիկոն բանակաթեմի ստրատեգոս: 802 թ. հուլիսի 19-ին ապստամբելով Նիկեփոր I-ի դեմ՝ հռչակվել է կայսր: Ապստամբությունը ճնշվել է, իսկ Վարդանն էլ ձեռնադրվել վանական:*

*9. Իրոք, պավլիկյան շարժումն անչափ հզորացավ ու տարածվեց Նիկեփոր I -ի օրոք: Այդ տարիներին պավլիկյանների պարագլուխներն էին Սերգիոսը և Հովսեփը:*

*10. Ակնարկը վերաբերում է Միքայել I կայսրին (811–813):*

*11. Խոսքը վերաբերում է Կ. Պոլսի պատրիարք Նիկեփոր I-ին (806–815):*

*12. Տե՛ս **Գործք առաքելոց**, Ե, 1–5:*

*13. Հմմտ. **Ա. Հռովմ.**, Ա, 32:*

*14. Սկզբնաղբյուրների համաձայն Միքայել I-ը պատժիչ արշավախմբեր ուղարկեց կայսրության բոլոր շրջանները՝ աղանդավորներին կոտորելու: Այդ իրադարձությունների մանրամասները տե՛ս **Р. М. Бартикян**, Источники для изучения истории павликианского движения, с. 148:*

## 2. ՆԻԿԵՓՈՐ ՊԱՏՐԻԱՐՔ

***Նշանավոր մատենագիր և եկեղեցական գործիչ Նիկեփոր պատրիարքը ծնվել է VIII դարի կեսերին և վախճանվել 828 թվականին: «Համառոտ պատմությունը» գրել է այն ժամանակ, երբ դեռ հոգևորական չէր: Ընդգրկում է 602–769 թթ. պատմությունը: Առանձին տեղերում նրա շարադրանքը բառացի համընկնում է Թեոփանեսի «Ժամանակագրության» հետ, մի բան, որ միևնույն աղբյուրից օգտվելու մասին է վկայում: Նիկեփորը հետևողական պատկերապաշտ էր, բայց իր ատելությունը դեպի պատկերամարտերն ավելի զուսպ է արտահայտում, քան Թեոփանեսը:***

***Նիկեփորը 817 թ. գրել է նաև երեք մասից բաղկացած «Հակաճառություններ» ընդդեմ Կոստանդին V-ի հայացքների, ներքին ու արտաքին քաղաքականության: Չի պահպանվել Նիկեփորի՝ աղանդավորների դեմ գրած մի ընդարձակ ուսումնասիրությունը, որի մասին հիշատակություն կա Նիկեփորի կենսագրության մեջ, որն***

***աշխատասիրել է Իգնատիոս Սարկավագը։***

***«Համառոտ պատմությունից» այստեղ բերված առանձին հատվածների հայերեն թարգմանությունը կատարված է հետևյալ հրատարակությունից.*** *Sancti Nicephori patriarchae Constantinopolitani Breviarium historicum de rebus gestis post imperium Mauricii, Migne, Patrologia graeca, t. 100։*

***«Հակաճառություններից» քաղված հատվածները՝*** *Nicephori patriarchae Constantinopolitani Antirrheticum adv. Const. Copr., Migne, Patrologia graeca, t. 100,* ***հրատարակությունից։***

## ՀԱՄԱՌՈՏ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

**սյունակ 973**

*... Կոստանդինն[1] այնուհետև իր որդի Լևոնին[2] կայսր թագադրելով, անհապաղ պատերազմի է դիմում սարակինոսների դեմ։ Հասնելով մելիտենացվոց քաղաքը, պաշարում և գրավում է այն, բազում ժողովուրդ գերեվարում և հսկայական ավար տանում...*

**սյունակ 976**

*... Կոստանդինն սկսեց կառուցել Թրակիայի քաղաքները, որտեղ բնակեցնում է մելիտենացվոց քաղաքից և Թեոդոսուպոլսից գաղթեցրած ասորիներին ու հայերին, սիրալիր կերպով նվիրելով նրանց կարիքներին անհրաժեշտ ամեն ինչ...*

## ՀԱԿԱՃԱՌՈՒԹՅՈՒՆ ԸՆԴԴԵՄ ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿՈՊՐՈՆԻՄՈՍԻ

**սյունակ 508–509**

*... Երբ նրանց[3] միջև բռնկվեց քաղաքացիական պատերազմ և վեճը լուծվում էր զենքով, երբ նրանք սկսեցին միմյանց ոչնչացնել, (Կոստանդինն) ավելի ավազակաբար, քան ռազմագիտաբար, կատաղածի պես ներխուժում է Հայաստանի տարածքը և բնակիչների համաձայնությամբ գրավում նրա բերդերը։ Նրանք հայ և ասորի քրիստոնյաներ էին։ Չհանդիպելով որևէ այլազգի թշնամու և խախտելով երդումներով հաստատված ապահովության մասին պայմանները[4], նա նրանց գաղթեցնում է Թրակիայի գյուղերը...։*

*1. Նկատի ունի Կոստանդին V-ին (741-775):*

*2. Ապագա կայսր Լևոն IV Խազարը (775-780): Նախօրոք թագադրվեց և հոր կողմից կայսերակից հռչակվեց հարստության գոյատևումն ապահովելու համար:*

*3. Նկատի ունի Օմայանների և Աբասյանների գահակալական կռիվները, որոնք սկիզբ առնելով 748 թ., ավարտվեցին 750 թ.՝ Աբասյանների հաղթանակով և նրանց հարստության հաստատմամբ:*

*4. Հավանաբար հայերի և ասորիների հետ հաստատված:*

## 3. ԻԳՆԱՏԻՈՍ ՍԱՐԿԱՎԱԳ

***Իգնատիոսը Կոստանդնուպոլսի Ս. Սոֆիա եկեղեցու սարկավագն էր ու լուսարարը: Հասավ մինչև Նիկիայի մետրոպոլիտի աստիճանին: Գրել է Տարասիոս (784-806) և Նիկեփոր (806-815) պատրիարքների «Վարք»-երը և այլ գործեր: Նիկեփոր պատրիարքի «Վարք»-ը մեր թեմայի համար կարևոր է իր այն վկայությամբ, որ պատրիարքը շարադրել և կայսրին է ներկայացրել աղանդների դեմ գրած իր մի գիրքը, որտեղ խոսվում էր նաև մանիքեցիների (իմա՝ պավլիկյանների) մասին: Այդ գիրքը, դժբախտաբար, կորել է:***

***Թարգմանությունը կատարված է բնագրի հետևյալ հրատարակությունից.*** *S. P. N. Nicephori Constantinopolitani archiepiscopi Vita scripta ab Ignatio diacono et cimeliarcha sanctissimae et magnae ecclesiae Sanciae Sophiae, ejus discipulo,* **Migne**, *Patrologia graeca, t. 100:*

### Գլուխ IV, պարբ. 26, սյունակ 69

*... Եռանդը նրան[1] ղրղում էր այլ ճանապարհով հանդես գալ անհավատ ու հրեշավոր աղանդավորների դեմ, որոնք այն ժամանակ իրենց հիմարության պղծությամբ լի խորհուրդները կատարում էին առանց ամաչելու: Ես նկատի ունեմ հրեաներին, փոյուգիացիներին և Մանիի նենգամիտ անհավատության խմիչքը դեռ անցյալում ճաշակածներին[2]: Նա հանգամանալից գիրք շարադրելով նրանց հրեշային կրոնի մասին, կայսրին[3] տեղյակ պահեց, (գրքում) գրույցի ձևով ցույց տվեց, թե ինչպես աղանդավորները (եթե այսուհետև ևս նրանց թույլ տրվի ուզածը գործել) համայն հասարակությունը պիտի պատուհասեն կարծես փտախտով: Նա իր գրքում խարազանում է հրեաների Տիրասպանությունը, փոյուգիացիների հրեշավոր ծաղրը, խոցում մանիքեական ցնդաբանությունները, այնպես, որ նրանք չհամարձակվեն իրենց պղծությունն առոգանել և իրենց խաբեության հիմարությունները թաքուն ու գաղտնի չչչնջան: Քանի որ իշխանություններն*

*արգելել են նրանց բացահայտ արտահայտվել, ապա այդ ամբարիշտները խուսափում են անգամ որևէ բան թաքուն գործել...*

*1. Նկատի ունի Նիկեփոր պատրիարքին (806-815)։*

*2. Խոսքը պավլիկյանների մասին է, որոնց գաղափարախոսության հիմքը վարքագիրը համարում է մանիքեությունը։*

*3. Այսինքն՝ Միքայել I-ին (811-813)։*

## 4. ՍՈՒՐԲ ՄԱԿԱՐԻՈՍԻ «ՎԱՐՔ»-Ը

***Մակարիոսը ծնվել է Կոստանդնուպոլսում VIII դարի երկրորդ կեսին։ Մտել է Բյութանիայի Պելեկետեի Ս. Հովհաննես վանքը։ Լինելով ծայրահեղ պատկերապաշտ, Լևոն V-ի կողմից աքսորվել է։ Նրան աքսորում են պահել նաև Միքայել Թլվատն ու Թեոփիլոսը։ Վախճանվել է Պրոպոնտիսի Աֆուսիա կղզում՝ Թեոփիլոս կայսեր ժամանակ (829-842)։***

***«Վարք»-ը պավլիկյանների պատմության ուսումնասիրության համար կարևոր է այն տեսակետից, որ ապացուցում է բյուզանդական իշխանությունների թշնամական վերաբերմունքը պավլիկյանների նկատմամբ, անկախ այն բանից, պետական իշխանությունը պատկերապաշտների ձեռքում էր գտնվում, թե պատկերամարտների։***

***Թարգմանությունը կատարված է բնագրի հետևյալ հրատարակությունից.*** *S. Macarii monasterii Pelecetes hegumeni, acta graeca. In «Analecta Bollandiana» , t. XVI, Bruxelles, 1897։*

*13. ...Անարդար դատավորը[1], լսելով այդ խոսքերը, գայրույթը տխմարության հետ խառնելով, խարազանով չարաչար խոշտանգեց սրբի մարմինը։ Զարչարանքներին հաջորդում է բանտը, որտեղ սուրբը չարունակում էր հրաշագործել՝ մարգարեանալով և ապագան կանխագուշակելով։*

*14. (Նույն) բանտն էին նետվել նաև պավլիկյաններ, այն է՝ մանիքեցիներ, որոնք մահվան դատապարտվեցին։ Սուրբը հորդորում էր նրանց՝ իրենց համար ելից աղոթքը[2] կատարի, բայց ինչպես ասաց սուրբը՝ «լույսն ու խավարը անհամատեղելի են[3] և հենց դրա պատճառով է, որ դուք ստանալու եք ամբարշտությանն արժանի պատիժ, այդ պատժով չեք պրծնելու, այլ դրանից հետո գնալու եք դեպի դժոխքը հավիտենական»։ Դրա վրա մահապարտներից մեկը որպես փրկության գրավական խոստացավ դարձի գալ և ասաց, թե մտերմանում է սրբին և հավանություն տալիս[4]։ Մակարիոսը սեփա-*

*կան խոսքով կնքեց նրան: Բոլորն էլ մահապատժի ենթարկվեցին, բայց փրկվեց միայն այդ մեկը, նա իր խոստումն էլ կատարեց՝ հրաժարվեց պիղծ աղանդից և ընդունեց բարեպաշտության լուսավոր դոգմաները...*

*1. Նկատի ունի Թեոփիլոս կայսրին (829-842):*

*2. Աղոթք, որ կատարում են մահամերձների վրա:*

*3. Հմմտ. «Պաւղոսի առաքելոյ առ Կորնթացիս երկրորդ թուղթ», Զ, 14 (այսուհետև՝ Բ Կորնթ.):*

*4. Մակարիոսին, որպեսզի նա իր վրա կարդա ելից աղոթքը:*

### 5. ՊԵՏՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑԻ

***Պետրոս Սիկիլիացին աչքի ընկնող հոգևոր-եկեղեցական գործիչ էր: Վասիլ I-ի (867-886) թագավորության սկզբում կայսեր կարգադրությամբ եղել է պավլիկյանների մայրաքաղաք Տիվրիկում (Տեփրիկե) ռազմագերիների փոխանակության հարցով: Ինն ամիս մնացել է այնտեղ և հանգամանորեն տեղեկացել շարժման պատմությանն ու գաղափարախոսությանը, այդ մասին գրելով «Պիտանի պատմություն» վերնագիրը կրող իր աշխատության մեջ: Բացի բանավոր տվյալներից, ձեռքի տակ է ունեցել աղանդավորների շրջանում գրված պավլիկյանների մանրամասն պատմությունը, ինչպես և խոշորագույն աղանդապետ Սերգիոսի (801-835) նամակները, որոնցից առանձին քաղվածքներ մեջ է բերել իր պատմական երկում: Պավլիկյան շարժման պատմության ամենագլխավոր աղբյուրն է:***

***Պետրոս Սիկիլիացին գրել է նաև պավլիկյանների գաղափարախոսության դեմ ուղղված վեց ճառ, որոնցից պահպանվել են առաջին երկուսը և երրորդի սկիզբը: Մինչև վերջերս պավլիկյանների մասին գրած Պետրոս Հեգումենոս անունով հեղինակը համարվում էր Պետրոս Սիկիլիացուց տարբեր անձնավորություն: Այժմ ապացուցված է, որ նա նույն Պետրոս Սիկիլիացին է, ըստ այդմ էլ մենք այդ երկու գործերը, որպես մեկ հեղինակի երկասիրություններ, բերում ենք միասին:***

***Պետրոս Սիկիլիացու երկու աշխատությունների հայերեն թարգմանությունը կատարված է բնագրի քննական հրատարակությունից, Ch. Astruc, W. Conuc-Wolska, J. Gouillard, P. Lemerle, D. Papachryssanthou, J. Paramelle,*** *Les sourees grecques pour l'histoire des Pauliciens d'Asie Mineure, In «Travaux et Mémoires» du Centre de Recherche d'Histoire et Civilisation byzantines, 4, 1970:*

## ՊԵՏՐՈՍ ՍԻԿԻԼԻԱՑՈՒ ՊԻՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԵՂԾՈՒՄ ԵՎ ԽՈՐՏԱԿՈՒՄ ՄԱՆԻՔԵՑԻՆԵՐԻ (ՈՐՈՆՔ ՆԱԵՎ ՊԱՎԼԻԿՅԱՆՆԵՐ ԵՆ ԿՈՉՎՈՒՄ) ՍԻՆ ՈՒ ԱՆՀԵԹԵԹ ԱՂԱՆԴԻ՝ ՇԱՐԱԴՐՎԱԾ ԲԱՆԱՎԵՃԻ ՁԵՎՈՎ ԵՎ ՀԱՍՑԵԱԳՐՎԱԾ ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ

*1. Թեպետև լավ է, որ տխմարությունը լռությամբ է սքողվում, բայց անհրաժեշտ է երկար լռության չմատնել այն, ինչ լռության արժանի չէ, քանզի «Տէր բանայ դաչս կուրաց»[1] և հավատքից բխող խոսքերից նախընտրում է հատկապես թոթովանքը և ոչ թե հռետորների ցանցապատ ճառերը, որոնք մոլորեցնում են լաբիրինթոսի նման: 2. Արդ և ես, թեև չեմ փայլում ճառելու ընդունակությամբ, կոչ անելով Սուրբ Երրորդությանը՝ միակ ճշմարիտ Աստծուն, ով փառաբանվում է «ի վերայ ամենայնի եւ ընդ ամենեսին եւ յամենեսին ի մեզ»[2], ով լցնում է ամեն մի բերան, որը բացվում է հանուն նրա[3], ապա և խնդրելով զորավիգ ունենալ ձեր, ո՛վ Տիրոջ նորընտիր սուրբ և պատվավոր հոտի առաջնորդ[4], քեզ ենթակա բոլոր աստվածային հովիվների և եկեղեցու համայն կազմի աղոթքները, որոշեցի ձեզ համար չարահյուսել մանիքեցիների[5] (որոնք նաև պավլիկյաններ են կոչվում), պիղծ աղանդի մասին, ո՞րտեղից, ինչպե՞ս և ո՞ւմ միջոցով այն մոլեգնորեն հասցրեց ներկա ապստամբությանը: Արդ, չկարծեք, որ պավլիկյաններն ու մանիքեցիները տարբեր բաներ են, նրանք նույնն են և նախորդ աղանդավորների ղոգմաների վրա բարդելով իրենց հորինած պիղծ դոգմաները, կորստյան միևնույն խորխորատը փորեցին: Թեպետև իրենք պնդում են, որ (մանիքեցիների) զազրագործություններին անհաղորդ են, այդուհանդերձ, նրանց գաղափարների ճշգրիտ պահապաններն են:*

*4. Ես ստիպված այս գործին ձեռնամուխ եղա: Աստծո կողմից օծված, աստվածային բոլոր շնորհքներով գերընականորեն օժտված, հռոմեական, դու ասա ամենաքրիստոնյա իշխանության գայխոնը բարեպաշտորեն ու աստվածասիրությամբ վարող (որ և կվարի նա դեռ բազում տարիներ իր սուրբ և աստվածապսակյալ որդիներով, մեր կայսրերով[6], որոնց անվերջ ու հավիտենական հիշատակը կպահպանվի այս և ապագա դարերում՝ մեր սրբազնագույն Տիրուհու, միշտ կույս Աստվածածին Մարիամի և համայն սրբոց աղոթքներով ու միջնորդությամբ) մեր մեծ կայսեր[7] թագավորության սկզբում կայսերական հանձնարարությամբ ես եղա այնտեղ: Մեր ծառայությունը գերիների փոխանակություն էր, ինչ որ, հուրախություն նրանց, հաջողությամբ տեղի ունեցավ նրանց սուրբ թագավորության ժամանակ:*

*5. Պավլիկյանների մոտ իմ ունեցած ծառայության ընթացքում ես որոշ ժամանակ մնացի Տիվրիկում, բազմիցս անգամ նրանց հետ խոսակցություն ունեցա, դեռ ավելին, այնտեղ բնակվող բազմաթիվ ուղղափառներից ավելի հանգամանորեն նրանց մասին իմացա: Այդ ամբարիշտների շաղակրատանքից տեղեկացա, որ նպատակ ունեն իրենցից մարդիկ ուղարկել Բուլղարիայի շրջանները՝ մարդկանց ուղղափառ հավատքից պոկելու և իրենց պիղծ աղանդի կողմը քաշելու համար, վստահ լինելով և հույս դնելով այն բանի վրա, որ սուրբ քարոզչությունը դեռ նոր է սկսվել այնտեղ, որով հեշտությամբ կկարո-*



***Տիվրիկի միջնաբերդը***

*ղանան մաքուր և ճշմարիտ ցորենին իրենց որոմը խառնել: Այդ ամբարիշտները սովորել են այդպես գործել, նրանք բազում անգամ են այդ բանն արել, սիրով են իրենց վրա վերցնում բազում տքնություններ, իրենց վտանգների մատնում, սեփական վարակով հանդիպածին վարակելու համար: Հենց այդ պատճառով ես լծվեցի այս գործին: 6. Ես՝ տրուպս և որևէ առաքինության անհաղորդս, ձեզ, Քրիստոսի պատգամների փորձված պահպանողներիդ եմ ներկայացնում հոգնատանջ աշխատանքով իմ իմացածը՝ բազմաց անվտանգությունն ապահովելու համար: Իսկ դու, ո՜վ աստվածային և սրբազան*

*առաջնորդ, ուշադրություն չդարձնելով ոճիս անպաճուճությանը, ընդունիր մեր աշխատանքն արժանիք չփնտրելով, քանզի դու մեր մեջ չես գտնի առաքինության նշույլ անգամ, ոչ էլ ոճի գեղեցկություն, ինչպես կհամոզվես ընթերցելով ստորաբերյալը:*

ՊԵՏՐՈՍԸ ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ՊՐՈԵԴՐՈՍԻՆ[8] ՆԱԽԱՍԱՑՈՒԹՅՈՒՆ

*7. Լույսի առկայությունը սպառում է խավարը, հովիվների հսկողությունը հալածական է անում գողերի և գազանների ոհմակները: Բանական ճշմարիտ հովիվը նա է, ով հետևորդն է ծշմարիտ Հովվի[9], ով Նրա նման «զանձն իւր դնէ ի վերայ ոչխարաց»[10], ում արդարությունը ինչպես լույս է ծագում[11], ով հոգատար հոգով, ամեն միջոցով հաջողությամբ ընդդիմանում է սատանայի ստորություններին: 8. Թեպետև բազմապիսի են խորամանկի թակարդները, բայց ինչպես սովորել ենք Սուրբ գրքից՝ «չեմք ինչ անտեղեակ խորհրդոցն նորա»[12], սովորել ենք ճանաչել նրա որոգայթները՝ ինչպես սարդոստայնը[13] կեննարար և բազմիցս փառավորյալ Երրորդության, միակ Աստծո, երկնի և երկրի, տեսանելի և աներևույթ արարչության արարչի, պահապանի և իշխողի օգնությամբ:*

*12. ... Նրանք Ավետարանի և (Պողոս) առաքյալի բոլոր ասույթներից են ճառում, լոկ իրենք տեղյակ լինելով իրենց նենգությանը, քանզի Սուրբ Գրոց քաջատեղյակ են:*

*13. Այդ պիղծերը, երբ առաջին անգամ են որևէ մեկի հետ խոսքի բռնվում, իրենց առաքինի են ձևացնում, նենգորեն հաստատում և հավանություն տալիս ուղղափառ քրիստոնյաների բոլոր դոգմաններին:*

*14. Անօրինաբար և չատ տգիտորեն այլաբանելով ասում են, թե խոստովանում են Սուրբ Երրորդությանն ու Աստծուն, նզովում նրանց, ովքեր այն չեն խոստովանում:*

*15. Ասում են, թեև ամբարիշտ ձևով և անաստվածաբար, թե մեր Տերն ու Աստվածը մարդեղացավ Կույսի մեջ և նզովում նրանց, ովքեր չեն խոստովանում այդպես: Խոսքով՝ մի ձևի, իսկ սրտով՝ այլ, նրանք ընդունում են Տիրոջ մարդեղացման վերաբերյալ բոլոր դրույթները, սիրով նզովում Մանիին և նրան հետևած բոլոր պիղծ հերետիկոսներին, ինչպես և Պողոս Սամոսատցուն: 16. Քանզի իրենք ունեցան չարիքի սրանցից չատ ավելի վատ ուսուցիչներ և առաջնորդներ: Նրանք, նայած պայմաններին, արտաքինով ու դեմքով ութոտանու կամ քամելեոնի նման փոխվում են, թեթևամիտներից որևէ մեկին*

*որսալու նպատակով, և երբ տեսնեն, որ այդ մեկն իրենց դատարկաբանություններին ուշադրություն է դարձնում, ահա այն ժամանակ են մի փոքր ծանոթացնում իրենց գաղտնիքներին: 7. Ահա դրա համար վնասակար բաների ծանոթությունն օգտակար է ոչ պակաս, քան առողջի: Պետո է իմանալ, դա ոչ թե գործածության մեջ դնելու համար, այլ խուսափելու դրանց ավերածություններից: Անցնենք մեր առաջիկա խնդրին:*

*36. Նրանց առաջին հատկանշական գիծն այն է, որ խոստովանում են երկու սկզբունք՝ Չար Աստված և Բարի Աստված, գտնում, որ այս աշխարհի արարիչն ու իշխողը մեկն է, իսկ ապագա աշխարհինը՝ մի ուրիշը:*

*37. Նրանց վերաբերյալ բազմիցս ասվել է, որպես գավեշտ, թե նրանք ազատության մեջ եղած ժամանակ, դիմելով որևէ մեկին, ով էլ նա լինի, հարց են տալիս. «Ասա ինձ, ի՞նչն է մեզ տարբերում հռոմներից»: Այդ անօրենները, անպիտանները, անհավատները, ապերախտներն ու անբարեսերներն իրենց քրիստոնյա են հորջորջում, իսկ մեզ՝ Քրիստոսի, մեր ճշմարիտ Աստծո անվան իսկական կրողներիս, հռոմներ են կոչում, ջանալով հատուկ անվան մեջ հեթանոսական բովանդակություն դնել, անուն, որով մենք՝ անխարդախ քրիստոնյաներս, ավելի ենք հպարտանում, քան եթե յուրաքանչյուրս տերը լինեինք համայն աշխարհում առկա ոսկուն, արծաթին և թանկագին քարերին:*

*38. Նրանք ասում են, թե հռոմներից իրենց տարբերողն այն է, որ իրենք մի Աստծո են ընդունում որպես այս աշխարհի արարչի, իսկ մի ուրիշ Աստծո էլ, որ այս աշխարհում իշխանություն չունի, այլ կունենա այն ապագայում: Նրան անվանում են նաև Երկնային Հայր: Իսկ մենք միևնույն Աստծուն խոստովանում ենք՝ արարիչ ամենայնի, թագավոր ամենեցուն և ամենակալ: Նրանք ասում են մեզ. «Դուք հավատում եք աշխարհի արարիչ (Աստծուն)», իսկ մենք նրան, որի մասին Տերն ավետարաններում ասում է. «Դուք ոչ ձայն նորա երբէք լուարուք, եւ ոչ զտեսիլ նորա տեսէք»[14]: Նրանք այդպես ահա իզուր ու հիմարորեն չարախոսում են, որի մասին հետո կասվի:*

*39. Երկրորդ. նրանք ամենափառավորյալ ու միշտ Կույս Աստվածածնին խորշում են դասել անգամ սովորական բարի մարդկանց թվում, չեն ընդունում, որ նրանից է ծնվել Տերը, այլ ասում են, թե իր մարմինը նա երկնքից է բերել, որ Տիրոջը ծննդաբերելուց հետո նա Հովսեփից ուրիշ երեխաներ էլ ծննդաբերեց:*

*40. Երրորդ. Նրանք խորշում են մեր Տիրոջ ու Աստծո մարմնի և*

*արյան հաղորդության սուրբ և սարսափելի խորհրդից և, չբավարարվելով դրանով, ջանում են ուրիշներին էլ համոզել այդպես վարվել, ասելով, թե (խորհրդավոր) ընթրիքի ժամանակ Տերն իր աշակերտներին ոչ թե հաց ու գինի տվեց, այլ փոխաբերաբար իր խոսքերը՝ որպես հաց ու գինի:*

*41. Չորրորդ. Նրանք մերժում են պատվական և կենարար խաչի պատկերը, ներգործությունն ու զորությունը, բազում լուտանքների են ենթարկում այն, որի պատկերը օդում նկարված տեսնելով, դևերն անգամ փախուստի են դիմում՝ իրենց առաջնորդի՝ սատանայի հետ միասին:*

*42. Հինգերորդ. Նրանք մերժում են Հին Կտակարանի բոլոր գրքերը, մարգարեներին կոչում մոլորեցնողներ ու ավազակներ, ինչպես այդ մասին իր տեղում ավելի հանգամանորեն կասվի, ընդունում են միայն Սուրբ Ավետարանի քառյակը, Սուրբ Պողոս առաքյալի տասնչորս թղթերը, Հակոբի կաթողիկե, Հովհաննեսի երեք թղթերը, Սուրբ Հուդայի կաթողիկե (թուղթը), Գործք առաքելոցը, որոնք բառացիորեն այնպես են, ինչպես մեզ մոտ:*

*43. Նրանք ունեն նաև իրենց ուսուցիչ Սերգիոսի աստվածատյաց, ամեն տեսակի ամբարտավանությամբ ու ամբարշտությամբ լի թղթերը:*

*44. Նրանք մերժում են եկեղեցու մեծ և իսկական հիմքի, երկնից արքայության բանալեպան, առաջին առաքյալ Պետրոսի երկու կաթողիկե թղթերը: Խորշելով նրանից, բյուր լուտանքների և հայհոյանքների են ենթարկում, չգիտեմ ինչու: Բայց ինչպես ես եմ ենթադրում (որ նրանց երեսին բազմիցս անգամ ասացի), այն պատճառով, որ նա մարգարեացավ նրանց ապագան, ասելով, թե այն կլինի նրանց ամբարիշտ, չար էությունից բխող: Երանելի առաքյալն իր երկրորդ թղթում ասում է. «Վասն որոյ, սիրելիք, այսոցիկ սպասեալ,— նա նկատի ունի Տիրոջ երկրորդ գալուստը,— փոյթ յանձին ունիջիք անբիծք եւ անարատք գտանել նմա ի խաղաղութիւն. Եւ զՏեառն երկայնամտութիւնն փրկութիւն համարեսջիք. զոր օրինակ եւ սիրելի եղբայրն մեր Պաւղոս ըստ շնորհելոյ իմաստութեանն նմա յԱստուծոյ գրեաց ձեզ. Որպէս եւ յամենայն իսկ թուղթսն խօսի վասն այսոցիկ. յորս գտանի ինչ-ինչ դժուարիմաց, զոր անուսմունքն եւ յողդողդքն կամակորեն, որպէս եւ զամենայն իսկ գիրս առ իւրեանց անձանցն կորուստ»[15]: Ահա սրա մեջ է առաքյալին ուղղված պարսավանքի պատճառը, բայց իրականում դա ներբողյան է, ուղղված նրա ճշմարիտ մարգարեության, ամեն մի խճողուն հռետորականությունից զուրկ ներբողյան:*

*45. Վեցերորդ. Նրանք խորշում են եկեղեցու քահանայապետներից, ասում են, թե քահանայապետները Տիրոջ դեմ ժողովվեցին[16], այդ իսկ պատճառով պետք չէ նրանց հիշատակել, խորշելով նրանց անունից անգամ: Այդ մասին հետագայում, հատուկ գլխում ավելի խորը քննարկման ժամանակ կասվի:*

*46. Արդ՝ ժամանակն է սկսել պատմական շարադրանքը...:*

*84. Նրա (Մանիի)[17] աշակերտներից ոմանք հասան մինչև Հայաստանի Սամոսատ (քաղաքը) և չարի որոմը այնտեղ սերմանելով, տեղի հայերից շատերին մոլորեցրին: Որոշ ժամանակ անց վատագույն ցանքը ծլեց և շատերին մահացու պտուղ տվեց, հասնելով մինչև Ֆանարիա:*

*85. Սամոսատից մի կին, անունը Կալլինիկե, ունեցավ երկու որդի՝ Պողոսին և Հովհաննեսին: Ահա այս երկու իժերին նրանց ծննդաբերող քարբը սնելով, ամենապիղծ աղանդն ուսուցանելով, Սամոսատից ուղարկեց մոլորությունը քարոզելու:*

*86. Նրանք հասնելով Ֆանարիայի շրջանը, եկան մի գյուղ և նրա բնակիչներին գտնելով տգետ ու (հավատքի մեջ) անկայուն, սրսկեցին նենգության թույնը, ցանեցին թշնամու դառն որոմը: Ահա այդ պատճառով էլ գյուղը վերանվանվեց Էպիսպարիս, և մինչև օրս էլ այդպես է կոչվում, իսկ աղանդն էլ ստացավ քարոզողների անունը, քանզի այդ ժամանակից սկսած աղանդավորները մանիքեցիների փոխարեն կոչվեցին պավլիկյաններ:*

*87. Մեր ամենաբարեպաշտ ու ուղղափառ կայսրերը, աստվածային եռանդով դրդված, մտահոգված լինելով, որ այդ պիղծ աղանդը գնալով առավել ևս չտարածվի և մեզանից շատերին չպղծի, հռոմեական տիրապետության սահմաններում հանդիպող մանիքեցիներին ժամանակ առ ժամանակ կոտորում են, ավետարաններում Տիրոջ ասույթի համաձայն, թե «զայնոսիկ որ ոչ կամէին զիս թագաւորել ի վերայ նոցա, ածէք այսր եւ սպանէք առաջի իմ»[18]:*

*88. Աստծո եկեղեցու թշնամիները տարբեր ժամանակներում բազմաթիվ են եղել, բայց Աստծո շնորհիվ եկեղեցու տարած հաղթանակները՝ բյուրապատիկ ավելի: Քանզի գտիչը չարյաց[19], բարիատյաց սատանան, որ նման է ամենազարհուրելի, վայրենի ոսոխի, իր կապարճը ապարդյուն դատարկած լինելով նախորդ աղանդների ձևով, իր ամենաօրհասական նետը մարդկանց վրա հետագա ժամանակներում է նետում, քանզի իր ողջ չարությունը դարերի վերջում նա հանդես է բերելու ոչ թաքուն, Աստված ամենեցուն թույլ է տալու նրան գործել բացահայտ, համաձայն աստվածաշունչ և ամենասուրբ ասույթի. «Ջարի կողմից ներգործվող բանսարկուն հրաշքներ է գոր-*

*ծելու «ի մոլորեցուցանել, թէ հնար իցէ եւ ըրնտրեալսն»*[20]*: 89.* ***Ի*** *դեմս բոլոր աղանդների, նա ցույց տվեց իր ամբարտավանությունը, բայց ի դեմս մանիքեցիների (որոնք և պավլիկյաններ են կոչվում) պիղծ աղանդի, հանդես բերեց իր մեծամտությունն այն աստիճան, որ համոզեց խոցվածներին չհրապարակել վերքերը, արբել թույնը որպես քաղցր գինի: Բայց այժմ (բանսարկուն) բոլոր աղանդների հետ կանգնած է մարդկանց առջև որպես խեղկատակ, մանկան պես ծաղրուծանակի է ենթարկվում, քանզի իր չարությունը պարտություն կրեց մեր բարեպաշտ, ուղղափառ, մեծ կայսրեր Վասիլի, Կոստանդինի և Լևոնի օրոք*[21]*:*



***Վասիլ I կայսեր դրամը***

*90. Հնում պիղծ պավլիկյանների թաքնված չարագույն թույնը, որ գրեթե բոլոր մարդկանց ուշադրությունից վրիպեց, այժմ բացահայտորեն պարտության է մատնվում մեր խաղաղարար, ուղղափառ, մեծ կայսրերի մշտարթուն աղոթքների, անքուն հոգատարության, աստվածընկալ հսկումների և հմուտ կառավարման շնորհիվ: 91. Այս պիղծ աղանդի թաքուն նենգությունը վրիպեց բոլոր նախկին կայսրերի ուշադրությունից*[22]*, բայց նրան չհաջողվեց թաքնվել մեր աշխարհաշեն, սուրբ մեծ կայսրերի արդար թագավորությունից: Թեև պետք էր, որ այդ խաբեությունը պարտություն կրեր, բայց անհրաժեշտ էր հարթ ու ամենաթագավորական հիմքի, թագավորող ուղիղ ճանապարհի առկայությունը, ինչպես բարի ու հիասքանչ իր բոլոր պատվական սխրանքների համար հավիտյանս հիշատակվող իր աստվածապսակյալ որդիների և մեր մեծ կայսրերի՝ Կոստանդինի և Լևոնի, հավիտենական օգոստոսների հետ միասին:*

*93. Թե ինչպես սկիզբ առավ այս պիղծ աղանդը, նախապես մանրամասն ասվել է, երբ խոսք եղավ Մանիի և մյուսների՝ մանիքեցի կնոջ՝ Կալլինիկեի որդի Պողոս Սամոսատցու և նրա եղբոր Հովհաննեսի մասին: Բայց նրանք, որոնց մասին դեռ ասելու ենք, թեև նախորդ աղանդների (գաղափարների) վրա բարդեցին որոշ չաղակրատություններ, այդ մասին վեց գլուխներում ասվեց, այդուհանդերձ, նախորդ աղանդապետների իսկական աշակերտներն էին, ինչպես այդ մասին դեռ մանրամասն կասվի: Այժմ կասենք, թե ովքեր էին վերջերս հանդես եկած (աղանդապետները), որոնց վրա հենվում են պավլիկյանները և իրենց ուսուցիչներն են համարում:*

*94. Հերակլի[23] Թոռ Կոստանդին կայսեր[24] Թագավորության ժամանակ Հայաստանի Սամոսատում, Մանանաղի անունը կրող գյուղում[25], Հանդես եկավ Կոստանդին անունով մի Հայ: Այս գյուղը մինչև օրս էլ մանիքեցիներ է սնում:*

*95. Ինչպես ճշգրտորեն մենք տեղեկացանք, այս (Կոստանդինը) մի քանի օր իր տանը Հյուրընկալում է Ասորիքից իր Հայրենիքը վերադարձող և Մանանաղի գյուղը Հասած մի գերի սարկավագի: Գերին իր Հետ Ասորիքից երկու գիրք էր տանում՝ Սուրբ Ավետարանն ու (Պողոս) առաքյալի Թղթերը, որոնք, ի փոխՀատուցումն Հյուրընկալության, նվիրում է Կոստանդինին:*

*96. Կոստանդինը, ստանալով երկու գրքերը՝ Ավետարանն ու [Պողոս] առաքյալի Թղթերը և տեսնելով, որ իր անօրեն ու պիղծ աղանդը խորշելի է բոլորին, որ մարդիկ խուսափում են դրանից՝ իր մեջ ներփակված գազրելիությունների պատճառով, և կամենալով վերստին կյանքի կոչել չարիքը, Հազդմանե սատանայի խորամանկում է Հետևյալը, կոչ է անում Ավետարանից և (Պողոս) առաքյալի Թղթերից բացի այլ գիրք չընԹերցել, նպատակ ունենալով այդ ճանապարհով սքողել չարիքից առաջացած վնասը, ինչպես որ Թույն ըմպել տվողները մեղրով են այն ծածկում:*

*97. Նախապես Հիշատակված մանիքեական գրքերից վերցնելով յուրաքանչյուր ամբարիշտության էությունը, նա սատանայի Համագործակցությամբ կարողացավ Ավետարանի և (Պողոս) առաքյալի Թղթերի իմաստը մեկնելիս աղավաղել ըստ սեփական ցանկության, իսկ բազմիցս Հիշատակված մանիքեցիների գրքերը, ինչպես ասվեց, մերժեց ամենից առաջ այն պատճառով, որ տեսնում էր, Թե ինչպես չատերն այդ գրքերի պատճառով սրի են քաշվում:*

*98. Քանզի մեր՝ իսկական քրիստոնյաներիս ամենաաստվածային և ուղղափառ կայսրերը, իրենց բոլոր բարի սխրանքներով Հանդերձ, սաՀմանում են և Հետևյալը. «մանիքեցիներին և մոնտանյաններին սրի քաշել, նրանց գրքերը կրակի տալ, այդ գրքերը Թաքցնողներին նույնպես մաՀապատժի ենԹարկել, իսկ ունեցվածքը՝ բռնագրավել Հօգուտ պետության»:*

*99. Մանիի աշակերտ Կոստանդինն իրեն աշակերտողներին կատարելապես մոլորեցնելու և կորստյան մատնելու, իր ասածները դյուրավ ընդունելի դարձնելու նպատակով կամեցավ, որպես դժվարընդունելի, Հրաժարվել Վալենտինոսի[26] փատաբանություններից ու ծայրաՀեղություններից, ... և Հրապարակ է գալիս որպես կորստյան նոր առաջնորդ: 100. ԱՀա սրանից սկսած մանիքեցիների բոլոր Հե-*

*տևորդները, անտեղյակ լինելով այս մեքենայությունններին, սիրով նզովում են Սկյութիանոսին, Բուդդասին և Մանիին՝ չարիքի առաջնորդներին, իսկ այս Կոստանդինին, որն իրեն Սիլվանոս վերանվանեց, և նրանից հետո հանդես եկածներին, հարգում են որպես Քրիստոսի առաքյալների՝ Պողոսին հավասար: 101. Այս Կոստանդինը, որ և Սալոանուս[27], թողնելով Մանանաղին, եկավ հաստատվեց Կողոնիայի մոտ գտնվող Կիբոսսա բերդում, հայտարարելով, թե ինքը (Պողոս) առաքյալի թղթերում հիշվող Սիլվանոսն է, որին, որպես հավատարիմ աշակերտի, Պողոսը Մակեդոնիա ուղարկեց: Նա իր աշակերտներին ցույց էր տալիս նախապես հիշատակված գերի սարկավագից ստացած Առաքյալի գիրքը և ասում. «Դուք մակեդոնացիներն եք, իսկ ես Պողոսի կողմից ձեզ ուղարկված Սիլվանոսը»: Եվ դա ասում էր Պողոսի նահատակությունից վեց հարյուր տարի անց, ինչպես ասվեց՝ Հերակլի թոռ Կոստանդինի օրոք:*

*102. Ամբողջ քսանյոթ տարի այնտեղ մնալով և տեղացիներից շատերին մոլորեցնելով, նա իր վարդապետությանն արժանի վախճանն ունեցավ: 103. Կայսրը, չգիտեմ ինչպես տեղեկանալով նրա մասին, ուղարկում է մի վասիլիկոսի[28], անունը Սիմեոն, հանձնարարելով քարկոծ անել չարության մշակին, իսկ իրենց անգիտությամբ մոլորված նրա աշակերտներին հանձնել Աստծո եկեղեցիներին դարձի և ուղղման բերելու համար, թեպետև նրանք անուղղելի մնացին: Սիմեոնն այդպես էլ արեց: 104. Գալով և իր հետ վերցնելով տեղացի իշխանավորներից մեկին, անունը Տրյուֆոն, լինում է տեղում, ձերբակալում է բոլորին և բերելով Կողոնիայի հարավային կողմը, կանգնեցնում է թշվառականին իր աշակերտների դիմաց, որոնց հրամայում է քարկոծել նրան: Աշակերտները վերցնում էին քարերը, բայց ձեռքներն իրենց գոտկատեղերին մոտեցնելով, ետ էին շպրտում քարերը, խնայելով իրենց ուսուցչին, որպես աստվածուստ իրենց ուղարկված: 105. Սիլվանոսը մի քանի տարի առաջ որդեգրել էր Հուստոս անունով մեկին, նրան ուսուցանել մանիքեական աղանդը, բայց այս դեպքում նրանից ստացավ իր տված դաստիարակությանն ու վարդապետությանն արժանի հատուցում: Վասիլիկոսի հրամանով Հուստոսը մի քար վերցրեց և որպես նոր Գողիաթի՝ հարվածեց ու սպանեց: Նրա վրա եկավ Դավթական ասույթը, թե՝ «Գուբն զոր փորեաց եւ պեղեաց, ի նոյն անկցի ի խորխորատ զոր եւ գործեաց» և «դարձցին ցաւք ի գլուխ նորա»[29]: Այդ վայրը նրա (դիակի) վրա կուտակված քարերի պատճառով Սորոս[30] կոչվեց և այդպես է կոչվում մինչև օրս էլ:*

*106. Սիմեոնը կայսեր հրամանի համաձայն Կոստանդինի աշակերտներին Աստծո եկեղեցիները հանձնեց՝ դարձի գալու, բայց*

*նրանք անդարձ մնացին, գերադասելով աղանդավոր մեռնել, քան թե զղջմամբ Աստծո գութը շարժել և հավիտենական փրկության արժանանալ: Սիմեոնը նրանց քննության ենթարկելով, բայց և աստվածաբանական դաստիարակության անհաղորդ լինելով, դեռ ավելին՝ լինելով թեթևամիտ, ուսավ այդ կործանարար աղանդը:*

*107. Վերադառնալով կայսեր մոտ և երեք տարի մնալով Կոստանդնուպոլսում՝ իր տանը, նա ստացավ սատանայի ներգործությունը և, ամեն ինչ լքելով, ծածուկ փախուստի դիմեց, եկավ վերոհիշյալ Կիբոսսան, հավաքեց Կոստանդինի աշակերտներին և դարձավ նրա վատթարության ժառանգորդը: Իր նախորդների նման ցանկանալով փառավորվել՝ իրեն վերանվանեց Տիտոս:*

*108. Սակայն ես նրան կոչելու եմ ոչ թե Տիտոս, քանզի նա չնմանվեց Պողոս առաքյալի կողմից Կրետեի եպիսկոպոս ձեռնադրված Տիտոսին, այլ Կիտոս, քանզի նմանվեց ջրերում բույն դրած ծովային կետ (ձկան): Ծովային կետի մասին ոմանք պատմում են, թե նա կոչվում է ասպիդոխելոնե, մեծությամբ կղզու չափ է, ունի կոպիտ ձայն: Նավաստիները, անգիտանալով նրան, նրա վրա են գցում խարիսխները, ցցեր խրում և կապում նավերը: Իսկ երբ նրա վրա խարույկ են վառում, կենդանին տաքանալով, մեկից սուզվում է և բոլորին ջրահեղձ անում: 109. Ահա նա ևս նրանց, ովքեր չիմացան իր վատթարության չափը, ուշադրություն չդարձրին նրա կոպիտ ձայնին, ընդհակառակը նրա վրա հույսի խարիսխը գցեցին, բոլորին հրո միջով Հադեսի խորխորատները իջեցրեց. նա իր կյանքը խարույկի վրա կործանեց՝ մյուս մոլորվածների հետ միասին և գնաց դեպի հուրն անշեջ:*

*110. Նա երեք տարի մնաց այնտեղ և շատերին մոլորեցրեց: Այնուհետև վերոհիշյալ Հուստոսի՝ քարի հարվածով Կոստանդինին սպանողի և Սիմեոնի, որ և Կիտոս, միջև բանավեճ է ծագում (Պողոս առաքյալի) «Առ Կողոսացիս» ուղղված թղթում հանդիպող առաքելական ասույթի շուրջ, թե՝ «Զի նովաւ հաստատեցաւ ամենայն որ ինչ յերկինս, եւ որ ինչ յերկրի, որ երևին եւ որ ոչն երևին, եթէ՛ աթոռք, եթէ՛ տէրութիւնք, եթէ՛ պետութիւնք, եթէ՛ իշխանութիւնք. ամենայն ինչ նովաւ եւ ի նոյն հաստատեցաւ»[31]: Հուստոսը կանգնեց ու ասաց. «Արդյոք մենք չե՞նք խաբում մարդկանց, նրանց հոգիները անխոհեմաբար կորստյան չե՞նք մատնում, ուսուցանելով առաքելական ասույթներին հակասող բաներ և այդ մարդկանց հոգու մեղքի համար ահեղ դատաստանի օրը մենք պատասխան չե՞նք տալու»: Սիմեոնը չէր համոզվում, ընդհակառակը, է՛լ ավելի համառորեն էր շարունակում աղավաղել միտքը, իր համար սովորական բան էր ասույթի*

*մեկնության համար այստեղից, այնտեղից բացատրությունների դիմել: 111. Հուստոսի և Սիմեոնի միջև ծագում է մեծ վեճ, Հուստոսը ցանկանալով առաքելական ասույթի իսկական իմաստն իմանալ, բարձրանում է Կողոնիայի եպիսկոպոսի մոտ, նրան հայտնում ամեն ինչ՝ և՛ իր մասին, և՛ իր կողմնակիցների և նրանց վարդապետության: Եպիսկոպոսն անհապաղ նրանց մասին հաղորդում է Հերակլից հետո թագավորած Հուստինիանոս կայսրին*[32]*, որը, տեղեկանալով, հրամայում է բոլորին քննության ենթարկել և մոլորության մեջ մնացողներին հրակեզ անել: Այդպես էլ եղավ, Սորոսի մոտ մի մեծ խարույկ վառեցին և բոլորին հրկիզեցին:*

*112. Նրանցից Պողոս անունով մեկը, ծագումով հայ, հայր երկու որդիների, որոնց անունները Գեգնեսիոս և Թեոդորոս էին, նրանց հետ փախուստի է դիմում և գալիս Էպիսպարիս, որին մենք նախապես մանրամասն հիշատակել ենք, երբ խոսում էինք Կալլինիկեի որդիներ Պողոս և Հովհաննես Սամոսատցիների մասին: Ահա այդ Պողոսից է, որ նրանք մանիքեցիների փոխարեն կոչվեցին պավլիկյաններ:*

*113. Պողոսն իր որդի Գեգնեսիոսին, որին վերանվանեց Տիմոթեոս, հաստատում է անաստվածության դպրոցի ղեկավար: Բայց երկու եղբայրների միջև, ես նկատի ունեմ Գեգնեսիոսին և Թեոդորոսին, կռիվ է ծագում, մեկն ասում էր, թե ինքն է ստացել (սուրբ) Հոգու աստվածային շնորհքը, իսկ մյուսը՝ թե ինքը: Ահա այդպես գժտվելով, պղծության պաշտպանները կատարյալ ատեցին միմյանց և այդպես մնացին մինչև իրենց կյանքի վերջը:*

*114. Տեղեկանալով նրանց մասին, կայսրը (այն ժամանակ Լևոն Իսավրացին էր) իր մոտ է հրավիրում Գեգնեսիոս-Տիմոթեոսին, ավելի ճիշտ՝ Թիմոթեոսին*[33] *և ուղարկում է Կոստանդնուպոլսի պատրիարքի մոտ:*

*115. Պատրիարքը, տեսնելով նրան, հարցրեց. «Դու ինչո՞ւ ուրացար ուղղափառ հավատքը»: Նա պատասխանեց. «Նզովյալ լինի նա, ով ուրացել է ուղղափառ հավատքը»: Ուղղափառ հավատք ասելով նա նկատի ուներ իր աղանդը:*

*116. Դարձյալ է հարցնում պատրիարքը. «Դու ինչո՞ւ չես հավատում և երկրպագում պատվական խաչը»: Նա պատասխանեց. «Նզովյալ լինի նա, ով չի երկրպագում և չի պաշտում պատվական ու կենարար խաչը»: Նա խաչ ասելով նկատի ուներ Քրիստոսին, որ պարզած ձեռքերով խաչի կերպարանք էր ստացել:*

*117. Վերստին հարց է տալիս նրան. «Դու ինչո՞ւ չես պաշտում և չես երկրպագում Սուրբ Աստվածածնին»: Նա պատասխանեց. «Նզովյալ լինի, նա ով չի երկրպագում ամենասուրբ Աստվածածնին՝*

*մեր բոլորի մորը, որի մեջ մտավ մեր Տեր Հիսուս Քրիստոսը»: Նա Աստվածածին ասելով նկատի ուներ Վերին Երուսաղեմը, «ուր կարապետն մեր Յիսուս եմուտ վասն մեր»[34]:*

*118. Պատրիարքը նրան կրկին հարց է տալիս. «Դու ինչո՞ւ չես հաղորդվում մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի անարատ մարմնով և պատվական արյամբ, այլ անպատվում ես այդ (խորհուրդը)»: Թիմոթեոսը պատասխանում է. «Նզովյալ լինի նա, ով անպատվում է ու չի հաղորդվում մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի մարմնով ու արյամբ»: Նա նկատի ուներ իր ասույթները:*

*120. Նա այդպիսի պատասխան տվեց մկրտության վերաբերյալ, ասելով, թե Տեր Հիսուս Քրիստոսն է մկրտությունը, քանզի գրված է. «Ես եմ ջուրը կենդանի»[35]:*

*121. Ահա այդպես Թիմոթեոսն ամեն ինչ աղավաղելով և առանձին-առանձին նզովքի տալով[36], անմեղ հայտարարվեց և կայսեր կողմից սիգիլիոն (կնիք) ստանալով, վերադարձավ Եգիպտոս, որտեղ հավաքելով իր բոլոր աշակերտներին, նրանց հետ փախուստի դիմեց և իջավ աստվածակործան Մանանաղին, որտեղ հանդես էր եկել նախապես հիշատակված Կոստանդինը:*

*122. Բազում տարիներ մնալով այնտեղ, ծայրահեղ մոլեգնության հասավ, չար հրեշտակների միջոցով գլխին (Աստծո) ցասումն ու բարկությունը թափվեց, չարչարվեց, Աստծուց պատժվեց, ժանտախտով կյանքը կործանեց, ամբողջ երեսուն տարի գլխավորելով ամբարիշտությունը:*

*123. Նա Զաքարիա անունով որդի ունեցավ, ինչպես և վարձով այծ արածեցնող մի (որդեգիր): Վերջինիս նա գտել էր ճանապարհին գցած, բարուրի մեջ փաթաթված, նա ապօրինածին էր, պղծված մահիճի ծնունդ: Պոռնիկը գիտե իր երեխաներին փողոց նետել, երկյուղ կրելով իր գործած հանցանքի համար: 124. Գեգնեսիոսի մահից հետո նրա աշակերտները երկուսի տրոհվեցին, մի մասը հարեց Զաքարիային, մյուսը՝ Հովսեփ ապօրինածինին: Նա (Հովսեփ) էր կոչվում: Նրանց միջև մեծ թշնամություն ծագեց (ինչպես դա տեղի էր ունենում նրանց նախորդների միջև էլ), յուրաքանչյուրը գտնում էր, թե ինքն է ստացել Սուրբ Հոգու շնորհքը, թեպետև ընդհակառակը, անմաքուր հոգու ներգործությունն էին ստացել: Զաքարիան գազազեց, կարծես զրկվում էր հորենական ժառանգությունից, քարով հարվածեց Հովսեփ-Աֆրոնիտոսին և քիչ մնաց նրան սպաներ:*

*125. Որոշ ժամանակ անց, նրանցից յուրաքանչյուրն իր աշակերտների գլուխն անցած ցանկացան այդ վայրից փախչել: Գյուղից մի*

*փոքր հեռացել էին, երբ հագարացիները, կասկածելով, որ նրանք ուզում են Ռոմանիա անցնել, սկսեցին հետապնդել նրանց: Զաքարիան, տեսնելով հագարացիների հարձակումը, միայնակ փախավ, լքելով իր աշակերտներին, որոնց հասնելով՝ հագարացիները սրի քաշեցին: Հենց սրա պատճառով էր, որ մյուսների կողմից Զաքարիան պարսավանքի ենթարկվեց: 126. Հովսեփ-Աֆրոնիտոսը, իմանալով այդ մասին, կառքերի ուղղությունը շրջեց դեպի Ասորիք և, երբ սարակինոսները մոտեցան, ասաց նրանց, թե դուրս են եկել պանիր պատրաստելու և անասուններ արածեցնելու: Հագարացիներն այս պատճառաբանությունից բավարարված, հանգիստ թողեցին նրանց ու հեռացան: 127. Հովսեփ-Աֆրոնիտոսը նպաստավոր առիթից օգտվելով, բոլորի հետ փախավ այդտեղից: Հասնելով բազմիցս հիշատակված Էպիսպարիս գյուղը, տեղի բնակիչների կողմից ուրախությամբ ընդունվեց: Բոլորը ջահեր վառած, մեծ պատիվներով, կարծես Քրիստոսի աշակերտը լիներ, ընդունեցին այդ մեծ անպատվության արժանիին: 128. Այդ մասին իմանալով, տեղի իշխանավորներից Կրիկորակես[37] անունով աստվածասեր մի այր բազմաթիվ զինվորներով շրջապատեց այն տունը, որտեղ օթևանել էր Մանիի աշակերտը: Նրա աշակերտներին նա ձերբակալեց, բայց (Հովսեփը) կարողացավ ծածուկ փախչել դեպի Փոյուգիա, որտեղից էլ գնաց հաստատվեց Պիսիդիայի Անտիոք (քաղաքում): Սա ևս երեսուն տարի մաքառեց հօգուտ չարիքի, իր աշակերտներին ասելով, թե ինքը Էպաֆրոդիտոսն է, Պողոս առաքյալի աշակերտը, որ նրա՝ առաքյալի, կողմից ուղարկվել է նրանց: Բայց ես նրան արժանավորապես Աֆրոնիտոս եմ կոչելու, քանզի շատ էր անհաղորդ ուսման ու խելքի: Նա բազում մարդկանց արատավոր չարիքին մասնակից դարձնելով, հավիտենական դժոխքին արժանացրեց, ինքն էլ այդտեղ կործանեց իր կյանքը, Խորտոկոպիոն կոչվող վայրում:*

*130. Նրա կենդանությանը իր աշակերտուհիներից մեկը Հայաստանում, նույնի (ինչպես ասում են հրեա) աշակերտներից մեկի հետ չնանալով, որդի ունեցավ, վատթարությամբ տխրահռչակ, աղտեղի Վահանին: 131. Հենց այս Վահանն էլ ժառանգում է Աֆրոնիտոսին: Նա դառնալով չարիքի ուսուցիչ, իր նախորդներից ստացած, ամեն տեսակի աղտեղությամբ լի աղանդը, անփոփոխ պահեց, բազում անմիտների կատարյալ կործանման տարավ:*

*132. Շատ չանցած Տաբիա[38] քաղաքի կողմից հանդես եկավ ճշմարտության մի հակառակորդ ևս: Այդ (քաղաքի) մոտ կա Անանիա անունով մի գյուղ, որտեղ բնակվում էր Դրյուինոս անունով մեկը:*

133. Սա մի որդի ունեցավ, անունը Սերգիոս՝ սատանայի պաշտպան Սերգիոսին, ով չարերին գառներից գայլ դարձրեց և նրանցով ցրիվ արեց Քրիստոսի հոտերը: Սերգիոսին, գառան կերպարանքով սարսափելի գայլին, ով խորամանկորեն իրեն առաքինի ներկայացրեց և այդ ձևով չարերին խաբեց: Սերգիոսին, Քրիստոսի խաչի թշնամուն, բերանն անաստվածության, Աստվածածնի և բոլոր սրբերի հայհոյիչին: Սերգիոսին, Քրիստոսի առաքյալների թշնամուն, մարգարեներին ատողին, Սուրբ Գրքից խորշողին, դեպի առասպելներն ու կեղծիքը դիմողին: Սերգիոսին, Քրիստոսին ատողին, եկեղեցու թշնամուն, «որ զՈրդին Աստուծոյ առ ոտն եհար. եւ զարիւն նորոյ ուխտին խառնակ համարեցաւ եւ զՀոգին չնորհաց թշնամանեաց»[39]: 134. Սերգիոսին, ով իրեն Մխիթարիչ[40] էր համարում և Տյուքիկոս կոչում և իր աշակերտների կողմից երկրպագվում որպես Սուրբ Հոգի: Սերգիոսին, խավարի սիրելին, իրեն փայլուն աստղ համարողին: Էլ ի՞նչ եմ երկարում և կարճ չեմ կապում: Գիտեմ, որ ողջ դարը չի բավականացնի նրան, ով կուզենա ըստ արժանվույն պատմել նրա վատթարության մասին:

135. Այս Սերգիոսը դեռ երիտասարդ հասակում մի մանիքեցի կնոջ հետ խոսակցության է բռնվում և նրանից խաբվելով՝ դառնում է Նեռի կարապետը: 136. Այդպես էլ պետք է լիներ, որ ամենաոսոխ աղանդի ուսուցիչներն ունենան կամ սարակինոսյան, կամ ստրկական ծագում, պոռնկության ծնունդ լինեն, կամ էլ կնոջից ստացած լինեն մոլորությունը: 137. Որպեսզի մարդիկ չկարծեն, թե իզուր տեղն ենք նրան պարսավում, կպատմենք նրա մասին հանգամանորեն: Նախ պատմենք, թե ինչպես թշվառականը հարեց աղանդին, հետո հենց իր ասույթներով կներկայացնենք նրան, թե ինչպիսին է նա, ավելի ճիշտ՝ թե ինչպիսին էր ամենաթշվառականը: 138. Երիտասարդ հասակում, ինչպես ասացինք, նա հանդիպեց թեթև բարքերի տեր մի մանիքեցի կնոջ: Սատանայի աշակերտուհին, լինելով շատ նենգ ու խորամանկ, ասաց նրան. «Լսում եմ քո մասին, տե՛ր Սերգիոս, որ շատ գրագետ և կրթված, ամեն տեսակետից բարի մարդ ես: Ասա՛ ինձ, ինչո՞ւ չես ընթերցում Սուրբ Ավետարանները»: Նա կնոջ խոսքերից խաբվեց, բայց և անտեղյակ լինելով այդ կնոջ մեջ թաքնված չարության թույնին, պատասխանեց. «Մենք աշխարհական մարդիկ ենք, մեզ համար անհրաժեշտություն չկա դրանք կարդալ, այլ միայն հոգևորականներին»: 139. Կինն ասաց. «Դա այդպես չէ, ինչպես կարծում ես, քանզի «ոչ է ակնառութիւն առաջի Աստուծոյ»[41]: Նա «զամենայն մարդիկ կամի զի կեցցեն եւ ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն»[42]: Ձեր հոգևորականները «վաճառական լինին բանին Աս-

*տուծոյ»[43], նրանք թաքցնում են ձեզանից Ավետարանների խորհուրդները, այդ պատճառով բարձրաձայն չեն ընթերցում ինչ գրված է նրանց մեջ, մի բանը կարդում են, մյուսը՝ ոչ, որպեսզի դուք ճշմարտությունը չիմանաք: 140. Գրված է քանզի Ավետարաններում, թե ոմանք «ասիցեն ցիս յաւուրն յայնմիկ, Տէր, Տէր, ո՞չ յանուն քո դևս Հանաք, եւ յանուն քո զօրութիւնս բազումս արարաք»: Թագավորը (երկնից) պիտի պատասխանի նրանց. «Ամէն, ամէն ասեմ ձեզ թէ ոչ գիտեմ զձեզ»[44]: Հետազոտի՛ր և տե՛ս, այդպես գրված չէ՞: Այդ ովքե՞ր են, որոնց Տերը կասի. «Ոչ գիտեմ զձեզ»: Սերգիոսը, լինելով տխմարագույն և տգետ, ապշեց ու լռեց:*

*141. Ավետարանական ասույթն այսպես պետք է Հասկանալ: Մինչև օրս էլ կան մարդիկ, որոնք, թեև քրիստոնյա են և կարծում են, թե բարեպաշտ կյանք են վարում, բայց նրանք սովորություն ունեն Հաճախ Հմայություններով դևերին փախուստի մատնել, Հիվանդություններ ու ախտեր բուժել, ինչպես անցյալում Սկևայի որդիները, այսպես կոչված երդմնեցնողները, որոնց մասին Գործք Առաքելոցում գրված է, թե, նրանք դիվաՀարներին երդմնեցնելով, ասում էին. «Երդմնեցուցանեմ զձեզ ի Յիսուս, զոր Պաւղոսն քարոզէ»[45] դուրս եկեք մարդկանց միջից»: Դևերը, Քրիստոսի անունից սարսափաՀար, փախուստի էին դիմում: 142. ԱՀա այդպես են վարվում ոմանք այսօր էլ անգիտանալով, որ Հմայություններով կորցնում են իրենց փրկությունը: Հենց նրանք են այդ օրն աղաղակելու «Տէր, Տէր, ո՞չ յանուն քո դեւս Հանաք, եւ յանուն քո զօրութիւնս բազումս արարաք»: Սրանց Տերը կպատասխանի. «Ամէն, ամէն ասեմ ձեզ թէ ոչ գիտեմ զձեզ»: 143. Կան և ուրիշներ, որոնք թեև վանականի անբասիր կյանք են վարում, բայց անգիտությամբ ու տգիտությամբ աղանդների մասնակից դարձան, այդ պատճառով էլ նրանք չեն արժանանալու [երկնից] արքայության: ԱՀա որպեսզի Արդար Դատավորը այդ օրը նրանց և ոչ մի բան պարտական չմնա, այստեղ նրանք բուժման են արժանանում, որպեսզի երբ նրանք աղաղակեն. «Տէր, Տէր, ո՞չ յանուն քո զօրութիւնս բազումս արարաք» որպես պատասխան լսեն. «Ընկեր, չզրկեմ քեզ, ընկալար անդէն զբարիս քո ի կեանսն քում: Առ զքոյդ եւ երթ»[46]:*

*144. Սրան և նմաններին անտեղյակ լինելով, Սերգիոսը փնտրում է Ավետարաններում և Թշվառական կնոջ ասած խոսքերը գրված գտնելով այնտեղ, Հարցնում է. «Ասա՛ ինձ, Տերը ո՞ւմ նկատի ուներ»: Կինը Հարցին չպատասխանեց, այլ դարձյալ Հարցրեց. «Ո՞ւմ նկատի ուներ Տերը, երբ ասաց. «զի բազումք յարեւելից եւ յարեւմտից եկեսցեն եւ բազմեսցին ընդ ԱբրաՀամու եւ ընդ ԻսաՀակայ եւ ընդ Յակով-*

*բու յարքայութիւն երկնից: Եւ որդիքն արքայութեան ելցեն ի խաւարն արտաքին»[47]: Արդ, ովքե՞ր են «որդիքն արքայութեան»: 145. (Սերգիոսը) չգիտեր, որ պատասխաներ, թե նրանք խրայելացիներն են, «որոց որդեգրութիւնն եւ պաշտօնն եւ աւետիքն» (Քրիստոսը խրայելացիներին «որդիք» է անվանում, չէ՞ որ նա Քանանուհուն ասաց. «Ոչ է բարւոք առնուլ զհաց որդոց»[48]: Նրանք վտարվեցին, քանզի խաչեցին նրան): 146. Թշվառ Սերգիոսն ահա սրանց անտեղյակ, ենթադրելով, որ այդ մոլեգին կինը փրկության առաջնորդ է, սկսեց մանրակրկիտ հարցուփորձ անել նրան արդեն ասվածի մասին: Իսկ կորստյան առաջնորդը «որպէս գերեզման բաց» բերանով սկսեց լուտանքներ թափել սրբերի հասցեին, ասելով. «Արքայության որդիները» հենց քո սրբերն են, ովքեր փախուստի են մատնում դևերին, բուժում մարդկանց ախտերը, նրանց ես դու պաշտում աստվածների պես, լքելով կենդանի և անմահ Տիրոջը, հենց սրանք են այն օրը լսելու Արդար Դատավորի բերանից, թե՝ «Ոչ երբէք գիտէի զձեզ»[49]:*

*147. Ահա այդպես անցնելով Ավետարաններում գրվածների վրայով, և տեսնելով, թե ինչպես (Սերգիոսը) տեղի է տալիս սկսեց յուրաքանչյուր բառի իմաստն աղավաղել և չատ չանցած նրանից պատրաստեց սատանայի գործիք, մարդկության դեմ նա սրեց մի սարսափելի նետ, որի նմանը չկա (Սերգիոսի) բոլոր նախորդների մեջ: 148. (Սերգիոսից) առաջ հանդես եկածները, թեև աչքի էին ընկնում իրենց վատթարությամբ, աղանդի գարշահոտ ճահճով, պիղծ ու անառակ գործունեությամբ: Աստծուն ուղղված հայհոյանքներով, այդուհանդերձ, մարդիկ խուսափում էին նրանցից, նրանք բոլորի համար գարշելի էին, այդ իսկ պատճառով նրանցից խաբվողների թիվը չնչին էր: 149. Սակայն այս մեկը թեև հրաժարվեց (նախորդների) խայտառակություններից ու բազմաթիվ անառակություններից, բայց որպես փրկիչ ղոգմաներ՝ պահպանեց ամեն տեսակի ամբարչտությունները, նենգորեն մի քանի առաքինություն իրեն վերագրեց, իրեն բարեպաշտ ձևացրեց և գայլին գառան մորթով ծածկեց: Ուրանալով բարեպաշտության զորությունը, անտեղյակների աչքին փրկության գեբազանց առաջնորդ երևաց: Վատթարն առաքինի է ձևանում, որոմն էլ ջանք է թափում, որպեսզի ցորեն կարծվի: 150. Ահա նման խորամանկություններով մինչև օրս անկայուն մարդկանց խաբում են: Բայց մենք բոլորս թող փրկվենք նրանց վատարվեստ մեքենայություններից՝ ամենամաքուր և ամենասուրբ մեր Տիրուհու, խսկական ու ճշմարիտ Աստվածածնի, միշտ կույս Մարիամի և բոլոր սրբերի աղոթքներով ու միջնորդությամբ: 151. Նրանք թշվառականներին մինչև կա-*

*տարյալ կորստյան չմատնեն, չեն Հայտնում իրենց մեծ խորՀուրդը՝ ուրացումն Աստծո:*

*152. Սատանայի առաջամարտիկ Սերգիոսը, կործանարար կնոջից ուսանելով աղանդը և կարծելով, որ բոլոր մարդիկ, ովքեր դավանում են մեր՝ իսկական քրիստոնյաներիս ճշմարիտ, մաքուր և բարեպաշտ Հավատքը, կորստյան են մատնված, սատանայական եռանդով լցված Հրապարակ է գալիս, դառնալով մոլորության նոր քարոզիչ: Իրեն Տյուքիկոս վերանվանելով՝ Պողոս առաքյալի թղթերում Հիշատակված Տյուքիկոսի անվամբ, բոլորին Հավաստիացնում էր, թե ինքը (Պողոս) առաքյալի աշակերտն է և նրա կողմից է ուղարկվել քարոզելու, սակայն իրականում ոչ բանն Աստծո, այլ ավերիչ մոլորություն: 153. Նա անդուլ անցավ այն բոլոր քաղաքներով ու գյուղերով, որտեղ ութ Հարյուր տարի առաջ (Պողոս) առաքյալը ճշմարտության խոսքն էր քարոզել, և շատերին Հեռացնելով ուղղափառ Հավատքից, սատանային բերեց, ինչպես այդ մասին նա իր թղթերից մեկում ասում է. «Ես Հոգնել եմ Արևելքից Արևմուտք և Հյուսիսից Հարավ, իմ ծնկների վրա Քրիստոսի Ավետարանը քարոզելով»:*

*154. Նա ամբողջ երեսունչորս տարի գլխավորեց՝ ավգուստա Իրենեից սկսած մինչև Թեոփիլոս կայսրը, Հիմքը դնելով այսօրվա ապըստամբության, որը կանխագուշակեց թեսաղոնիկեցիներին Պողոս առաքյալը և որով պղծվեց Քրիստոսի եկեղեցու մեծ մասը: Նա ոմանց զրկեց այս ժամանակավոր կյանքից՝ սեփականությունից զրկելով և անժամանակ սպանելով, ուրիշներին, իր պղծությանը Հետևած մարդկանց անմասն դարձրեց նաև Հավիտենական կյանքին, բազմաթիվ ամուսինների բաժանեց և իր աշակերտներին տվեց պղծեն նրանց մաՀիճը, բազմաՀամար մանուկների իր աշակերտների միջոցով անջատելով մայրական կրծքից, մի մասին սպանեց, իսկ մյուսին, ծնողներից զրկելով և իր արյամբ բոլորին փրկած կենդանի Աստծուց անջատելով, Հագարացիներին վաճառեց: 155. Ծնողքի մինուճար բազմաթիվ գեղադեմ երիտասարդների և աղջիկների, ծնողքից բաժանելով, բարբարոսներին ստրկության տվեց, բազում եղբայրների և քույրերի, ազգականների ու բարեկամների գժտեցնելով ու ունեցվածքից զրկելով, օտար երկիր ուղարկեց, որոնց լացն ու կոծը մինչև երկնակամարն է բարձրացել: Իրենց կուսությունը Քրիստոսին ընծայած բազմաթիվ վանականների և միանձնուՀիների իր աշակերտներով պղծեց և մենակյաց կյանքից օտարացնելով՝ Աստծուց էլ օտարացրեց: Բազում քաՀանաների և ղևտացիների[50], անջատելով ուղղափառ Հավատքից, գառներից մարդակեր գազանների*

վերածեց: Շատերին կապանքների մեջ, բանտերում սպանել տվեց, ուրիշներին էլ՝ հարուստից աղքատ դարձրեց: 156. Եվ այսքան չարիքների պատճառ դարձածն արդյո՞ք կարող է երկրպագվել որպես Մխիթարիչ: Չէ՞ որ նրա աշակերտները նրա անվամբ աղոթելով, ասում են. «Աղոթքը Սուրբ Հոգու թող ողորմի մեզ»:

157. Սակայն նա ասում է. «**Ես այս դժբախտությունների համար մեղք չունեմ, ես բազմիցս կոչ եմ արել նրանց վերջ տալ հռոմայեցիների գերեվարմանը, բայց նրանք չլսեցին ինձ**»: Բայց ինչպե՞ս ես դու քեզ անմեղ համարում: Եթե նրանք քեզ չէին լսում, ապա ինչո՞ւ համաձայնվեցիր լինել անհնազանդ մի ժողովրդի հետ, որին ի վիճակի չէիր կառավարել: Ինչո՞ւ մինչև մահ նրանց հետ էիր մնում: Եվ դու նրանց սովորեցնում էիր ընթանալ Քրիստոսի ճանապարհով, ինչո՞ւ չէիր սովորեցնում և հետևյալը, որ Տերն ասաց. «Եւ յորժամ հալածիցեն զձեզ ի քաղաքիս յայսմիկ, փախիջիք յայլ»[51]: 158. Ես պարսավելու եմ քեզ, հենվելով նաև հենց քո ասույթների վրա: Կողոնիայի (աղանդավորներին) գրում էիր այսպես. «**Կանխավ գիտենալով ձեր հավատքի չափանիշը, հիշեցնում եմ ձեզ, որ ինչպես որ մյուս եկեղեցիները հովիվներ և ուսուցիչներ են ստացել,—** նկատի ունի Կոստանդինին և մնացածներին,— **այդպես և դուք ստացել եք պայծառ ճրագ, լուսավոր աստղ, փրկության առաջնորդ, ըստ գրվածի, «եթէ ակն քո առատ է, ամենայն մարմինդ լուսաւոր եղիցի»**[52]:

159. Ով երիցս թշվառական, ամեն տեսակի անօրինությամբ լի, եթե դու, ինչպես պնդում ես, Պողոս առաքյալի աշակերտն ես, ինչո՞ւ չես նմանվում ուսուցչին: Նա իրեն բոլորի «փարելի» էր համարում, «վիժվածք» և «նվաստագույնն առաքյալներից», իսկ դո՛ւ, այսքան վատություններ գործած և ոչ մի լավ բան չանողդ, փարիսեցուց ավելի՞ ես մեծամտանում[53]: Դու չե՞ս ընթերցել ասույթն այն մասին, թե «իրեն ներբողողն արժեք չունի, թեկուզև ճշմարիտն ասի»[54]: Դու կատարելապես մթին մտքով ու դատողությամբ ինչպե՞ս կեղծավոր կերպով քեզ լուսավոր աստղ, պայծառ ճրագ, փրկության առաջնորդ ես համարում, դո՛ւ, որ այնքան հոգիներ կորստյան մատնեցիր, ինչպե՞ս քեզ Քրիստոսի եկեղեցու մարմնի աչք կոչեցիր, ո՜վ խև ու խելագար: 160. Դո՛ւ, թշվառակա՛ն, լինելով կույր, ինչպե՞ս ուրիշների համար փրկության առաջնորդ դարձար: Չե՞ս կարդացել, թե «կույր կույրի յորժամ առաջնորդէ, երկոքին ի խորխորատ անկանին»[55]: Քո ո՞ր մեկ առաքինությանդ նախանձեն, որ գոռում ես, թե «**Ինձ նմանվեք և ինձնից ստացած ավանդույթները պահպանեք**»: Ահա քո հավատքի և վարդապետության սերմից մեծ ամբարշտություն ծլեց, քո

*աշակերտները նախքան քեզ ճանաչելը գառներ էին, իսկ այժմ, երբ ճանաչեցին քեզ, ավելի ճիշտ՝ երբ նրանք քո կողմից ճանաչվեցին, մարդակեր գազանների վերածվեցին:*

*161. Մի քիչ հետո նա գրում է. «**Ոչ ոք և ոչ մի ձևով չխաբի ձեզ: Այս ավետիսները ունենալով Աստծուց, արիացե՛ք. քանզի վստահ լինելով ձեր սրտերին, գրում ենք ձեզ, որ բարապանը, բարի հովիվը, Քրիստոսի մարմնի առաջնորդը, Աստծո տան ճրագը ես եմ, «ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչեւ ի կատարած աշխարհի»[56]: «Զի թէպէտ եւ մարմնով հեռի եմ. այլ հոգւով ընդ ձեզ եմ»[57]: «Այսուհետեւ ողջ լերուք, հաստատուն կացէք, եւ Աստուած խաղաղութեան եղիցի ընդ ձեզ»[58]:** Ով դու թշնամին ճշմարտության, որդին սատանայի, ամենայն չարագործության մշակ, ինչպե՞ս համարձակվեցիր այդպիսի բաներ ասել, քեզ Աստծուն հավասար համարել, չէ՞ որ «ամենայն որ բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի»[59], որ իրեն փառավորողի փառքը ոչինչ է, որ Սուրբ Հոգին հայհոյողը քավություն չունի ոչ այս աշխարհում և ոչ ապագա: Դու այս բոլորի համար պատասխանատու ես:*

*163. Նա շարունակում է. «**Ասածիս ավելացնում եմ և հետևյալը. Կորնթոսի եկեղեցին հիմնադրեց Պողոսը, իսկ Մակեդոնիայինը՝ Սիլվանոսն ու Տիտոսը:** Նա Մակեդոնիա ասելով նկատի ունի Կիրոսսայի ժողովարանը, իսկ Կոստանդինին և Սիմեոնին անվանում է Սիլվանոս և Տիտոս: **Աքայան զարդարեց Տիմոթեոսը:** Աքայա ասելով նկատի ունի Մանանաղին, իսկ Գեգնեսիոսին Տիմոթեոս է անվանում, իսկական Թիմոթեոսին: **Փիլիպեցիների եկեղեցին հովվեց Էպաֆրոդիտոսը:** Նկատի ունի ապօրինածին այծարած Հովսեփին, իսկական Աֆրոնիտոսին, իսկ նրա աշակերտներին անվանում փիլիպեցիներ: **Լավոդիկեցիների ապա և Կողոսացիների եկեղեցիներում Տյուքիկոսն ուսուցանեց:** Կողոսացիք է համարում նա արգաուսցիներին, իսկ լավոդիկեցիներ՝ Կինոխորիոնում բնակվող չներին: Այս երեքի մասին նա ասում է, թե երեքը մեկ են և մեկի՝ Տյուքիկոսի կողմից են հիշվում: 164. Դու տեսնո՞ւմ ես, թե ինչպես է նա իրեն ուսուցիչ կանգնեցնում Նեռի ժողովարաններում, և չատերին խաբելու համար հիմարաբար ու չատ անմտորեն (Պողոս) առաքյալի թղթերում հիշված Քրիստոսի եկեղեցիների անունները դնում, անուններ, որ նրանք ստացել են բազում տարիներ առաջ: 165. Ասա՛ ինձ, խաբեբա, ճշմարտության մեղադիր, Երուսաղեմից մինչև Իլլիրիկոն և շրջակայքը վարդապետած Պողոսը ինչպե՞ս թե միայն Կորնթացիների եկեղեցին հիմնադրեց: Եվ եթե քո կողմից հիշատակվածները Պողոսի աշակերտներն էին, ինչպե՞ս կարող էին (Պողոսին) աշակերտել, և ո՞րտեղ, եթե ծնվել են*

*նրանից ութ հարյուր տարի անց: Ինչո՞ւ ես մաքառում ճշմարտության դեմ: Ինչպե՞ս չես ամաչում խաբեական խոսքերով և սուտ անուններով այսքան ժողովուրդ խաբելուց: Ինչո՞ւ ես սիրել մարդկային փառքը և ոչ Աստծո:*

*166. Դու կոչ ես անում, որ բոլորը քեզ ընդունեն որպես Քրիստոսի առաքյալ, քանզի ասում ես Լևոն Մոնտանացուն.* ***«Դու գգույշ եղիր, վերջ տուր անսասան հավատքը տրոհելուն: Դու որևէ մեղադրանք ունե՞ս մեր դեմ: Ես որևէ մեկին նեղացրե՞լ եմ, կամ մեծամտացե՞լ եմ: Չես կարող ասել, բայց եթե ասես էլ, քո վկայությունը ճշմարիտ չէ: Բայց ես, քավ լիցի, չեմ ատի քեզ, այլ կոչ եմ անում. այնպես, ինչպես դու ընդունում ես առաքյալներին և մարգարեներին, որոնք չորսն են, ընդունիր և հովիվների ու ուսուցիչների, որպեսզի գազանակեր չլինես»:***

*167. Մի այլ տեղում ասել ես.* ***«Առաջին պոռնկությունը, որ Ադամից ենք ժառանգել, բարեգործություն է, բայց երկրորդը ավելի մեծ պոռնկություն է, որի մասին (Պողոսն) ասում է. «որ պոռնկին՝ յիւր մարմինն մեղանչէ»***[60]*: Դրան ավելացնում ես.* ***«Քրիստոսի մարմինը մենք ենք, իսկ նա, ով հեռանում է Քրիստոսի մարմնի ավանդույթներից, այն է՝ իմ, նա մեղանչում է, քանզի դիմում է այլ բան վարդապետողներին և չի լսում առողջ խոսքերին»***: *168. Ասա՛, ամբարշտության պաշտպան, ինչպե՞ս թե պոռնկությունը բարեգործություն է, որ անգամ պոռնկացողը արարքը գործելուց հետո դատապարտում է այն, որը բոլոր աստվածաշունչ գրքերը մերժում են: Դու ինչպե՞ս հանդգնեցիր քո սանձարձակ անզգամությամբ ժխտել տերունական ասույթները, որոնք չնություն են համարում մինչև անգամ հայացքը, չէ՞ որ Տերն ասում է. «Ամենայն որ հայի ի կին մարդ առ ի ցանկանալոյ նմա՝ անդէն շնացաւ ընդ նմա»*[61]*, ուզեցիր քո ասույթները հիմնավորել հույս դնելով մարդկանց դատարկամտության վրա, քո կողմը ձգելու համար ստրկամիտ և անառակ մարդկանց, ասելով, թե գոյություն չունի այլ պոռնկություն, բայց միայն մեկը՝ քեզանից խուսափելը: Ո՞ւմ կհավատան, ճշմարտության խոսքին, թե քո՝ մոլորեցնողի և ճշմարտության թշնամու:*

*169. Մենք նրա վայրահաչություններից մի քանիսը միայն քաղեցինք նրան և աշակերտներին դատափետելու համար և այստեղ մեջ բերեցինք ցույց տալու համար նրա սրտի չարանենգ գանձարանը, «քանզի ի յաւելուածոյ սրտի խօսի բերան»*[62]*: 170. Բայց ոչ ոք թող չկարծի, թե Սերգիոսի և Մանիի վարդապետած աղանդները տարբերվում են միմյանցից, ո՛չ, միևնույնն են: Երբ այս Սերգիոսը սկսեց վարդապետել, կամենալով բազում աշակերտներ հավաքել, անջատել*

*նրանց Քրիստոսի եկեղեցուց և իր եռևից տանել, երկիցս և երիցս անգամ ընդդիմացավ Վահանի՝ իր աղտեղի դասընկերոջ ու դավանակցի դեմ, բարեպաշտ ձևանալով՝ սկսեց բոլորին լսելի պարսավել նրան, բայց ոչ հավատքի, այլ նրա անսովոր անօրեն արարքների համար: 171. Վահանն ասում է նրան. «Դու վերջերս հանդես եկար, մեր ուսուցիչներից և ոչ մեկին չես տեսել, հետը չես եղել, իսկ ես տեր էպաֆրոդիտոսի աշակերտն եմ և ուսուցանում եմ այնպես, ինչպես սկզբից ինձ սովորեցրել է»: 172. Սերգիոսը խորշանք զգալով նրա քարոզած գարշահոտ ճահճից, երեսն ի վայր նշավակելով նրան, երկուսի բաժանեց աղանդը, (Վահանի) հետ մնացողներին կոչեց վահանյաններ, իսկ Վահանն էլ սերգիոսականներ կոչեց Սերգիոսի աշակերտներին:*

*173. Սերգիոսի մահից հետո նրա աշակերտները, չկարողանալով տանել բոլորի կողմից վահանյանների պատճառով իրենց հասցեին ուղղված նախատինքն ու անպատվությունը, սկսեցին վահանյաններին կոտորել, որպեսզի իրենցից սրբեն նրանց խայտառակությունը: 174. Մի ոմն Թեոդոտոս՝ Սերգիոսի սինեկդեմոսը[63], ասաց. «Հակառակության և ոչ մի հիմք չկա ձեր և այդ մարդկանց միջև, բոլորս էլ մինչև մեր ուսուցչի հանդես գալը միևնույն հավատքն էինք դավանում»: Դրանով դադարեցրին նրանց կոտորելը:*

*175. Բարեպաշտ կայսր Միքայել [I] Վանականը և նրանից հետո թագավորած Լևոնը, տեսնելով, որ այս աղանդը վարակել է քրիստոնյաների մեծ մասը, Հռոմեական պետության բոլոր շրջանները հրաման ուղարկեցին՝ որով այդ պիղծ աղանդի կողմնակիցներին կոտորում էին: 176. Կայսեր հրամանն եկավ և Արմենիականների (բանակաթեմը)՝ Նեոկեսարիայի եպիսկոպոս Թովմային և էքսարքոս Պարակոնդակեսին: Ահա կայսեր հրամանի համաձայն՝ աղանդավորներին, որպես դեպի կորուստն առաջնորդողների և մահապատժի արժանիների, կոտորում էին: 177. Դրա վրա Սերգիոսի աշակերտներից աստատներ[64] կոչվողներից ոմանք մատնությամբ ու նենգությամբ սրի քաշեցին էքսարքոսին, իսկ կինոխորիտները՝ նմանապես մետրոպոլիտ Թովմային, որից հետո աստատները փախան Մելիտենե: 178. Այդտեղի սարակինոսների ամիրան այն ժամանակ Մոնոխերարեսն[65] էր: Ահա աստատները, նրանից ստանալով Արգաուսը, հաստատվեցին այնտեղ և ամեն տեղից այնտեղ հավաքվելով, սկսեցին ավարառել Ռոմանիան:*

*179. Սերգիոսը մի քանի տարի իր աշակերտների հետ մնալով Արգաուսում, Աստծո արդար դատաստանի համաձայն կացնահար եղավ, որպես Աստծո եկեղեցին երկուսի հատած, և նետվեց հուրն*

*հավիտենական։ 180. Քանզի Նիկոպոլսի Կաստելլոնից Ցանիոնը (Սերգիոսին) գտնելով Արգաուսից վերև գտնվող լեռան վրա տախտակներ տաշելիս, կացինը ձեռքից խլելով՝ հարվածեց նրան ու սպանեց։ 181. Ահա այսպես հեռացավ այս կյանքից վերջին ու ամենամեծ գազանը, աշխարհի արարչագործության վեց հազար երեք հարյուր քառասուներեքերորդ թվականին [= 835 թ.]։*

*182. Նրա ամենամտերիմ աշակերտներն էին Միքայելը, Կանակարիսը և Հովհաննես Աորատոսը, երեք ստանուն հոգևորականներ, նախապես հիշատակված Թեոդոտոսը, Վասիլիոսը, Զոսիմոսը և շատ ուրիշներ։ 183. Ահա նրա այս աշակերտները, որոնց նրանք նաև սինեկդեմոս են անվանում, որպես ինչ-որ ստանուն հոգևորականներ, Արգաուսում հավաքված համայն ժողովրդին, իրենց ուսուցիչ Սերգիոսի մահից հետո շարունակեցին ավերել նրա և նախորդ (աղանդապետների) վարդապետություններով։ Նրանք նոր ուսուցիչ չհռչակեցին, ինչպես նախկիններն էին անում, այլ բոլորը հավասար էին։ Նրանք ունեն և ավելի ստորադաս ստանուն հոգևորականներ, որոնց նոտար են անվանում։*

*184. Այն ժամանակները հանդես եկած և այդ ավերիչ ժողովրդի առաջնորդը դարձած Կարբեասը[66], այդ ժողովրդին այնքան բազմացրեց, որ Արգաուսում չէր տեղավորվում, դրա համար նա եկավ, կառուցեց Տիվրիկն ու այնտեղ բնակվեց և՛ ազատվելու համար իրենց հարևան մելիտենացի հագարացիների գերիշխանությունից, և՛ մարդկանց հետ շփում չունենալով, կատարելապես դևերին նմանվելու։ Նա ուզում էր մոտենալ Հայաստանին և Ռոմանիային։ 185. Նա նպատակ ուներ իրեն ենթարկվողներին հպատակեցնել և օգտագործել գերեվարության համար, իսկ չենթարկվողներին վաճառել սարակինոսներին, ավարառել Ռոմանիայի Պոնտոսում գտնվող սահմանամերձ շրջանները։ Բացի այդ, օգտվելով տեղի հարմարավետությունից, Ռոմանիայում մահապատժի սպառնալիքի տակ ապրող այդ աղանդի կողմնակիցների համար պատրաստի ապաստարան էր նախապատրաստում, ապա և Տիվրիկի մոտիկ ապրող անառակ, սանձարձակ ու տխմար մարդկանց իր մոտ էր կանչում, քանզի այդտեղ խայտառակ արարքներ գործելու ազատություն կար։ Նրա կենդանությանը հիշյալ ստանուն հոգևորականներից ոմանք կործանեցին իրենց կյանքը, ոմանք էլ մնացին։*

*186. Նրա մահվանից հետո այդ կործանարար ժողովրդի իշխանությունը ժառանգում է Խրիսոխերիսը[67], նրա եղբորորդին և փեսան։ 187. Մենք նրա օրոք գերի իշխանավորների փոխանակության հա-*

*մար եղանք Տիվրիկում, կայսերական առաջադրանքով, ինչ որ կատարեցինք մեր բարեպաշտ, արդար կայսրեր Վասիլի, Կոստանդինի և Լևոնի թագավորության երկրորդ տարում: 188. Մենք այնտեղ մնացինք ինն ամիս, երբ դեռ կենդանի էին սինեկդեմոս կոչվող պիղծ Վասիլիոսն ու Զոսիմոսը, և մեր առաջ դրված խնդիրները, ճշգրտորեն հետազոտելով ու աշխատասիրելով, ջանացինք բոլորին հայտնի դարձնել՝ հրամանով մեր սուրբ, ուղղափառ և մեծ կայսրերի, որպես նվաստ ու անարժան ստրուկ, տեղի տալով մեծ երկյուղին: 189. Բայց սրանց մասին բավական է: Հաջորդ ճառերում մենք ձեզ կպատմենք նրանց մի քանի ավելի կատարյալ աղանդների մասին, եթե մեզ՝ նվաստներիս Աստված օգնության ձեռք մեկնի, որին՝ Հոր և Որդվո և Հոգվույն Սրբո, միակ ճշմարիտ Աստծուն, ամենայն տեսանելի և աներևույթ արարչության արարչին, պահպանչին ու Տիրոջ է պետք փառքը հավիտյան: Ամեն:*

## ՊԵՏՐՈՍԻ՝ ԱՄԵՆԱՆՎԱՍՏ ՎԱՆԱԿԱՆԻ ՈՒ ՎԱՆԱՀՈՐ [ԵՐԿԸ] ՊԱՎԼԻԿՅԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՆՈՒՅՆ ՄԱՆԻՔԵՑԻՆԵՐՆ ԵՆ

*1. Պավլիկյանները, որ նույն մանիքեցիներն են, մանիքեցիների փոխարեն պավլիկյաններ կոչվեցին ոմն Պողոս Սամոսատցու՝ Կալլինիկե անունով մի մանիքեցի կնոջ անունից: Այդ կինն ունեցավ երկու որդի, հիշյալ Պողոսին և Հովհաննեսին:*

*2. (Կալլինիկեն) մանիքեական աղանդն ուսուցանելով, նրանց Սամոսատից Արմենիակների (բանակաթեմն) ուղարկեց իրենց աղանդը վարդապետելու: Գալով Ֆանարեայի մի գյուղը, նրանք տարածեցին իրենց աղանդը: Այսուհետև գյուղը վերանվանվեց Էպիսպարիս, իսկ նրանց աշակերտները կոչվեցին պավլիկյաններ:*

*3. Այս պավլիկյանները հիշյալ, ոչ այնքան անվանի Պողոսի վարդապետությունից մի քանի տարի անց մի ուրիշ ուսուցիչ ունեցան, անունը Կոստանդին, որն իրեն Սիլվանոս վերանվանեց: (Պավլիկյանները) հենց սրան են համարում իրենց առաջին աղանդապետը և ոչ Պողոսին:*

*4. Քանզի նա իր հերետիկոսական գաղափարները ոչ գրավոր, այլ անգիր, բանավոր ավանդությամբ ավանդեց նրանց, Ավետարանն ու (Պողոս) առաքյալի (թղթերը) սակայն գրավոր: Դրանք և՛ գրությամբ, և՛ բովանդակությամբ բառացիորեն համընկնում են մերիններին, միայն աղավաղվել է յուրաքանչյուր գլխի իմաստը՝ ըստ իր գաղափարների: Նա նրանց համար կարգ էլ սահմանեց, թե Ավետարանից ու*

*Առաքյալի (Թղթերից) բացի պետք չէ որևէ այլ գիրք ընթերցել:*

*5. Կոստանդին-Սիլվանոսից հետո նրանք ունեցան երկրորդ ուսուցիչ, անունը Սիմեոն, որն իրեն վերանվանեց Տիտոս: Երրորդ ուսուցիչը ծագումով հայ էր, անունը Գեգնեսիոս, որն իրեն վերանվանեց Տիմոթեոս, չորրորդը՝ Հովսեփը, որն իրեն վերանվանեց Էպափրոդիտոս: Նրանից հետո Զաքարիան, որին, սակայն, որպես վարձկանի ո՛չ ճշմարիտ հովվի, ոմանք չեն ընդունում: Վեցերորդը աղտեղի Վահանն էր, իսկ յոթերորդը՝ Սերգիոսը, որն իրեն Տյուքիկոս վերանվանեց:*

*6. Մանիին, Պողոսին ու Հովհաննեսին և ուրիշներին, ով էլ նրանց առաջարկվի, սիրով նզովում են, բայց Կոստանդինին, որ Սիլվանոս վերանվանվեց, Սիմեոն-Տիտոսին, Գեգնեսիոս-Տիմոթեոսին, Հովսեփ-Էպափրոդիտոսին, աղտեղի Վահանին և Սերգիոս-Տյուքիկոսին նրանք համարում են իրենց ուսուցիչները և ոչ մի դեպքում չեն նզովում, այլ պատվում են ինչպես Քրիստոսի առաքյալներին:*

*7. Ընդունում են վեց եկեղեցի.* ***Մակեդոնիան****, այն է՝ Կիբոսսան, Կողոնիայի մի բերդը, ուր ուսուցանեցին Կոստանդին-Սիլվանոսն ու Սիմեոն-Տիտոսը,* ***Աքայան****, այն է՝ Մանանաղին, Սամոսատի գյուղը, ուր ուսուցանեց Գեգնեսիոս-Տիմոթեոսը,* ***Փիլիպեցվոցը****, այդպես են անվանում Հովսեփ-Էպափրոդիտոսի և իրենց կողմից վարձկան հովիվ հորջորջված Զաքարիայի աշակերտներին,* ***Լավոդիկեցվոցը****, նկատի ունեն արգաուսցիներին,* ***Եփեսացվոցը****, այն է՝ մոպսուեստացիներին, և* ***Կողոսացվոցը****, նկատի ունեն կինոխորիտներին: Վերջին երեք եկեղեցիներում, ասում են, Սերգիոս-Տյուքիկոսը ուսուցանեց:*

*8. Պատվում ու հարգում են այս վեց եկեղեցիները և յոթ ուսուցիչներին, իսկ բոլոր մնացածներին, ով էլ իրենց առաջարկվի, և՛ նզովում են, և՛ մերժում:*

*9. Իրենց առաջին դոգման մանիքեցիներինն է, սրանք էլ նրանց նման երկու սկզբունք են խոստովանում: Ասում են, թե «Հռոմայեցիներից մեզ լոկ մի բան է տարբերում, այն, որ մենք երկնային հորը մի աստված ենք համարում և գտնում, որ նա այս աշխարհում իշխանություն չունի, այլ կունենա այն ապագա (աշխարհում), և մի ուրիշ աստված՝ աշխարհի արարչին, որն ունի այս աշխարհի իշխանությունը: Իսկ հռոմայեցիները,— ասում են նրանք,— միևնույն աստծուն խոստովանում են և՛ որպես երկնային հայր, և՛ որպես համայն աշխարհի արարիչ»: Իրենք իրենց քրիստոնյա են կոչում, իսկ մեզ՝ հռոմայեցի:*

*10. Իրենց մասին գաղափար չունեցողներին նրանք պատրաստակամությամբ ասում են. «Հավատում ենք Հոր, Որդուն և Սուրբ Հո-*

*գուն, Հորը երկնային: Նզովյալ լինի նա, ով այդպես չի խոստովանում»: Նրանք մեծ վարպետությամբ սքողում են իրենց վատությունը, քանզի ասելով «Հորը երկնային», չեն ավելացնում՝ «միակ Աստծուն, ով ստեղծեց երկինքն ու երկիրը և ամեն ինչ, որ նրանցում է»: Դրա համար մանիքեցու հետ խոսքի բռնվող ուղղափառը պետք է նրանից պահանջի արտասանել հավատո հանգանակը, այն է. «Հաւատամ ի մի Աստուած հայր ամենակալ, արարիչն երկնի եւ երկրի, տեսանելեաց եւ ամենայն աներեւութից» և շարունակությունը:*

*11. Այնուհետև առանց չափ ու սահմանի հայհոյում են ամենասրբուհի Աստվածածնին: Իսկ եթե մեր կողմից ստիպվեն խոստովանել նրան, ասում են այլաբանորեն. «Հավատում եմ ամենասրբուհի Աստվածածնին, որի մեջ մտավ և որից դուրս եկավ Տերը»: Նկատի ունեն «Վերին Երուսաղեմը», ուր (Պողոս) առաքյալի ասելով՝ «Կարապետ մեր Յիսուս եմուտ վասն մեր»[68]: Նրանք չեն ասում «Ճշմարիտ սուրբ Մարիամ Աստվածածին», ոչ էլ թե «Տերը նրանից մարդեղացավ»:*

*12. Հայհոյում են և մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի պատվական մարմնի և արյան հաղորդության աստվածային խորհուրդը, ասելով, թե «Տերը իր ասույթները տալով առաքյալներին, ասում էր. «Առէք, կերայք եւ արբէք», բայց ոչ «հացը և գինին»: «Պետք չէ,– ասում են նրանք,– հաղորդվել հացով և գինով»:*

*13. Հայհոյում են նաև պատվական խաչը, ասելով, թե «Խաչը ինքը Քրիստոսն է, պետք չէ երկրպագել փայտը, քանզի նա անիծյալ գործիք է»:*

*14. Մերժում են մարգարեներին և մյուս սրբերին, նաև մեծ առաջին առաքյալ Սուրբ Պետրոսին, բոլորից շատ նրան են վատաբանում և նրանից խորշում, ասելով, թե սրանցից և ոչ մեկը չի պատկանում ընտրյալների թվին:*

*15. Երբ մեզ հետ են խոսակցության բռնվում, իրենց ժողովարաններն այլաբանորեն կաթողիկե եկեղեցի են անվանում, բայց իրենց շրջանում՝ աղոթարան:*

*16. «Մկրտություն» ասելով հասկանում են Ավետարանի ասույթները, ինչպես որ Տերն է ասում. «Ես եմ ջուրը կենդանի»:*

*17. Ահա նման և բազում այլ դեպքերում այդպես այլաբանորեն են արտահայտվում՝ երբ բացահայտվեն կամ անել վիճակում գտնվեն: Բայց պետք է նրանց հետ մշտապես խելամիտ և պարզիպարզո բանավիճել, քանզի կեղծիքը նրանց համար միշտ պատրաստ է, իրենց սեփական օրենքն է, հատկապես երբ նեղ դրության մեջ են ընկնում: Նրանցից ինչ էլ պահանջեն կամ ստիպեն որ ասեն, խաբեությամբ*

*կկատարեն, այդ բանի համար իրենց շրջանում անմեղ են համարվում:*

*18. Քանզի Մանին նրանց հենց այդպես էլ ավանդեց: Նա ասաց. «Ես անգութ չեմ Քրիստոսի նման, որն ասաց. «Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկանց, ուրացայց եւ ես զնա»[69]: Ես ասում եմ. «Ով մարդկանց առջև ինձ ուրանա և կեղծիքի օգնությամբ ապահովի իր փրկությունը, որպես ինձ չուրացողի, սիրով, առանց պատասխանատվության ընդունում եմ և՛ կոչը, և՛ կեղծիքը, դա համարում եմ հօգուտ ինձ արված խոստովանություն»:*

*19. Նրանք նմանապես մերժում են մեր երեցներին և մնացած հոգևորականներին, իրենց հոգևորականներին անվանում են սինեկդեմոսներ և նոտարներ, որոնք և՛ հանդերձանքով, և՛ կենցաղավարությամբ, և՛ կյանքի մնացած բոլոր պայմաններով իրենցից չեն տարբերվում:*

*20. Նրանք աղավաղված ունեն Ավետարանի և (Պողոս) առաքյալի բոլոր ասույթների (իմաստը), դրանք հակասում են մերիններին: Նրանք այնպիսի մեկնություն են տալիս դրանց, որ հարմարվեն իրենց գաղափարներին: Ինչպես ասվեց, այդ (ասույթները)՝ գրությամբ բառացիորեն նույնն են, ինչ մերինները, բայց՝ իմաստն աղավաղած, ինչպես այդ մասին ավելի հստակ ասել եմ իմ համգամանալից չարադրանքի մեջ[70]:*

*21. Անհրաժեշտության դեպքում երկրպագում են մեր Ավետարանին, բայց ոչ նրա վրա եղած խաչին, այլ Գրքին, ասելով, «Քրիստոսի խոսքերն են, դրանք ենք երկրպագում»:*

*22. Նրանցից ոմանք հիվանդանալու կամ այլ ցավ զգալու դեպքում, խաչն իրենց վրա են դնում և երբ ապաքինվեն, ջարդում են այն և կրակը գցում այրելու համար, կամ էլ տրորում են:*

*23. Նրանցից ոմանք իրենց երեխաներին մկրտում են իրենց մոտ գերի ընկած մեր երեցների ձեռքով: Ուրիշներն էլ աննկատ մեր ուղղափառ եկեղեցին են մտնում և հաղորդվում աստվածային խորհուրդներին, պարզամիտներին է՛լ ավելի խաբելու համար:*

*24. Ահա գործի դնելով այդպիսի խորամանկություն ու կեղծիք, նրանք մասնակից են դառնում ամեն տեսակի անառակության ու պղծության, առանց խտրության ու վախի խառնակվում են երկու սեռի ներկայացուցիչների հետ: Ասում են, որ նրանցից ոմանք միմիայն իրենց ծնողներից են քաշվում:*

*1. **«Գիրք սաղմոսաց»**, սաղմոս ճԽԵ (ճԽԶ), 8:*

*2. **«Պաւղոսի առաքելոյ առ Եփեսացիս Թուղթ»**, Դ, 6 (այսուհետև՝ Եփես.):*

*3. Հմմտ. **Սաղմոս Զ** (ԶԱ), 11:*

*4. Խոսքը վերաբերում է Բուլղարիայի արքեպիսկոպոսին:*

*5. Բյուզանդական հեղինակները ջանում են ցույց տալ, որ պավլիկյան աղանդը III դարում ծագած և բազում դարեր բյուզանդական հասարակությանը հուզած մանիքեության վերածնունդն է: Դրանով նրանք ոչ միայն աշխատում էին ժողովրդական զանգվածներին հեռացնել նորահայտ աղանդից (կայսրությանը հաջողվել էր դարերի ընթացքում հեղինակազրկել մանիքեությունը), այլև պավլիկյանների դեմ օգտագործել մանիքեցիների դեմ գրված ողջ գրականությունը, նրանց դեմ կիրառել մանիքեցիների դեմ հրապարակված օրենքները:*

*6. Նկատի ունի Վասիլ I-ի որդիներ Կոստանդինին և Լեոնին, որոնք նրա թագավորության սկզբում կայսերակից հռչակվեցին:*

*7. Նկատի ունի Վասիլ I-ին (867–886):*

*8. Այսինքն՝ արքեպիսկոպոսին:*

*9. Նկատի ունի Քրիստոսին:*

*10. Հմմտ.* ***«Աւետարան ըստ Յովհաննու»****, Ժ, 11 (այսուհետև՝ Հովհ.):*

*11. Հմմտ.* ***«Մարգարէութիւն Եսայեայ»****, ԿԲ, 1 (այսուհետև՝ Եսայի):*

*12.* ***Բ Կորնթ.****, Բ, 11:*

*13. Հմմտ.* ***Եսայի****, ԾԹ, 5:*

*14.* ***Հովհ.****, Ե, 37:*

*15.* ***«Թուղթ Պետրոսի երկրորդ»****, Գ, 14–16:*

*16. Հմմտ.* ***«Աւետարան ըստ Մատթէոսի»****, ԻԶ, 3 (այսուհետև՝ Մատթեոս):*

*17. Մանիքեության հիմնադիր: Մահապատժի ենթարկվեց պարսից արքա Վարահրան (Վռամ) I-ի կողմից 276/277 թվականին:*

*18.* ***«Աւետարան ըստ Ղուկասու»****, ԺԹ, 27 (այսուհետև՝ Ղուկաս):*

*19.* ***«Պաւղոսի առաքելոյ առ Հռովմայեցիս թուղթ»****, Ա, 30 (այսուհետև՝ Հռոմ.):*

*20.* ***Մատթեոս****, ԻԴ, 24:*

*21. Կոստանդինն ու Լեոնը Վասիլ I-ի որդիներն էին, որոնք հոր կենդանության ժամանակ կայսերակից օծվեցին, Կոստանդինը 867 թ. նոյեմբերի 5-ի և 868 թ. փետրվարի 12-ի միջև, իսկ Լեոնը՝ 870 թ. հունվարի 6-ին: Վասիլի մահից հետո թագավորեց Լեոնը՝ որպես Լեոն VI (886–912): Կոստանդինը վախճանվել էր դեռևս 879 թ.:*

*22. Պետրոս Սիկիլիացին պարզապես հաճոյաբանում է: Չէ՞ որ ինքը Պետրոսն արդեն ցույց էր տվել, որ բյուզանդական կայսրերը պավլիկյաններին հալածում էին դեռևս VII դարից:*

*23. Հերակլ կայսր (610–641):*

*24. Նկատի ունի Կոստաս II-ին (641–668):*

*25. Մանանաղի գավառում հետագայում տարածվեց թոնդրակեցիների աղանդը (տե՛ս* ***Արիստակես Լաստիվերտցի****, Պատմություն, գլ. ԻԳ):*

*26. Վալենտինոսի և նրա գաղափարների մասին խոսում է Կյուրեղ Երուսաղեմացին:*

*27. Սիլվանոսի փոխարեն գրում է Սալոանուս: Բառախաղ. հունարեն սալոս նշանակում է «հիմար, խելագար», իսկ անուս՝ «անխելք, անմիտ»:*

*28. Այդպես էին կոչվում կայսեր մերձավոր մարդիկ, պալատականները, որոնք զբաղված էին գլխավորապես դիվանագիտությամբ ու ներքին անվտանգության հարցերով:*

*29. **Սաղմոս** է, 16, 17:*

*30. Սորոս հունարեն նշանակում է «կույտ»:*

*31. **«Պավղոսի առաքելոյ Թուղթ առ Կողոսացիս»**, Ա, 16–17 (այսուհետև՝ Կողոս.):*

*32. Հուստինիանոս II (685-695, 705-711):*

*33. Բառախաղ: Տիմոթեոս նշանակում է «աստծո պատիվ», իսկ «Թիմոթեոս»՝ «աստծո ցասում»:*

*34. **«Պավղոսի առաքելոյ Թուղթ առ Եբրայեցիս»**, Զ, 20 (այսուհետև՝ Եբր.):*

*35. Հմմտ. **Հովհ.**, Դ, 10–11:*

*36. Տիմոթեոսը պարզապես արտասանել է «Ուրացման բանաձևերը», որ եկեղեցին պարտադրում էր աղանդավորներին արտասանել, երբ նրանք «դարձի» էին գալիս: Այդպիսի «բանաձևեր» պահպանվել են:*

*37. Մեր կարծիքով Գրիգոր Մամիկոնյանը (մանրամասն տե՛ս **Р. М. Бартикян**, Источники для изучения истории павликианского движения, էջ 48):*

*38. Քաղաք Առաջին Գալատիայում:*

*39. **Եբր.**, Ժ, 29:*

*40. Հովհաննու Ավետարանում Մխիթարիչ (Պարակլետոս) է կոչվում Սուրբ Հոգին, որին Քրիստոսը խոստանում է իր աշակերտներին (**Հովհ.**, ԺԴ, 16, 26, ԺԵ, 26, ԺԶ, 7):*

*41. **Հռոմ.**, Բ, 11:*

*42. **Ա Տիմ.**, Բ, 4:*

*43. **Բ Կորնթ.**, Բ, 17:*

*44. **Մատթեոս**, ԻԵ, 12: Հմմտ. **Ղուկաս**, ԺԳ, 25, 27:*

*45. **«Գործք առաքելոց»**, ԺԹ, 13–14:*

*46. Հմմտ. **Մատթեոս**, Ի, 13 և **Ղուկաս**, ԺԶ, 25:*

*47. **Մատթեոս**, Ը, 11–12:*

*48. Հմմտ. **Մատթեոս**, ԺԵ, 26: **Մարկոս**, Է, 27:*

*49. **Մատթեոս**, Է, 23:*

*50. Այստեղ նշանակում է «քահանաների սպասավորներ»:*

*51. **Մատթեոս**, Ժ, 23:*

*52. Նույնը, Զ, 22:*

*53. **Ղուկաս**, ԺԸ, 10–13:*

*54. Հմմտ. **Բ Կորնթ.**, Ժ, 18:*

*55. **Մատթեոս**, ԺԵ, 14:*

*56. Նույնը, ԻԸ, 20:*

*57. **Կողոս.**, Բ, 5:*

*58. **Բ Կորնթ.**, ԺԳ, 12:*

*59. **Ղուկաս.**, ԺԴ, 11, ԺԸ, 14: Հմմտ. **Մատթեոս**, ԻԳ, 12:*

*60. **Մատթեոս**, Ե, 28:*

*61. Նույն տեղում:*

*62. Նույնը, ԺԲ, 34:*

*63. Նոր Կտակարանում «սինեկդեմոս» են կոչվում Պողոս առաքյալի ուղեկիցները (**Գործք առաքելոց**, ԺԹ, 29):*

*64. Նշանակում է «անկայուն», մի տեղում չմնացող: Բացառված չէ, որ հայերեն «հաստատ, հաստատուն» բառն է, որ վերցված է Պողոս առաքյալի թղթերից. «Այսուհետեւ ողջ լերուք, հաստատուն կացէք, եւ Աստուած խաղաղութեան եղիցի ընդ ձեզ» (**Բ Կորնթ.**, ԺԳ, 12):*

*65. Թարգմանաբար նշանակում է «Միաձեռնյան»: Արաբերեն ալ-Ակտայի հունարեն թարգմանությունն է: Խոսքը Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտայի մասին է, որին Թեոփանեսի Շարունակողը կոչում է Ամեր և Ամբրոն:*

*66. Մեր կարծիքով Կարապետ անվան փաղաքշականն է՝ Կարբիս: Բյուզանդական էպոսում նա կոչվում է Կարոես:*

*67. Թարգմանաբար նշանակում է «Ոսկեձեռնյան»:*

*68. Հմմտ. **Եբր.**, Զ, 20:*

*69. **Մատթեոս**, Ժ, 33:*

*70. Նկատի ունի իր «Պատմության» 42-44, 79-81, 95-97, 138 պարբերությունները:*

## 6. ԱՄՈՐԻՈՆԻ 42 ՆԱՀԱՏԱԿՆԵՐԻ ՎԱՐՔԸ

***Թեոփիլոս կայսեր ժամանակ բյուզանդա-արաբական պատերազմների թատերաբեմը դարձավ նաև Թեոփիլոսի ծննդավայր Ամորիոն քաղաքը, որը 838 թ. սեպտեմբերի 24-ին գրավվեց և կործանվեց խալիֆա Մոտասսեմի կողմից: Դա խալիֆայի պատասխանն էր Թեոփիլոսի կողմից Կոմմագենեի Սոզոպետրո (Զապետրա) քաղաքի կործանման համար: Ամորիոնում արաբների ձեռքն ընկան բազմաթիվ ռազմագերիներ, այդ թվում և բյուզանդական 42 նշանավոր բարձրաստիճան զինվորականներ և քաղաքական դեմքեր, որոնք տարվելով Բաղդադ, բանտ նետվեցին, իսկ 845 թ. գլխատվեցին: Նրանց թվում էր և Կողոնիայի դուքս Կալիստոսը, որն արաբների ձեռքը հանձնվեց 838 թ. դեպքերից հետո՝ պավլիկյան պարագլուխ Կարբեասի կողմից: «Ամորիոնի 42 նահատակների վարքը», որից հատվածներ ենք բերում թարգմանաբար, մեր նյութի համար կարևոր է այն տեսակետից, որ ավելի ստույգ է դարձնում Կարբեասի ապստամբության ժամանակը (IX դարի 30-ական թվականների վերջ կամ 40-ական թվականների սկիզբը, մինչդեռ Թեոփանեսի Շարունակողի տվյալներով ապստամբությունն ավելի ուշ ժամանակ է ցույց տրված):***

***Թարգմանությունը կատարված է բնագրի հետևյալ հրատարակությունից՝*** ***В. Васильевский и П. Никитин**, Сказания о 42 Аморийских мучениках и церковная служба им. «Записки Императорской Академии наук», серия VIII, т. VII, № 2, СПб., 1905:*

## էջ Г. 27

*... Մահվան մահիճում Թեոփիլոսը[1] իր հարազատներին կտակ է թողնում այն մասին, որ Կողոնիա ուղարկված փառավորյալ Կալլիստոսը մնա տեղում և վարի դուքսի պաշտոնը...։*

## էջ Г. 29

*... (Կալլիստոսը Կողոնիայում) տեսնում է, որ որոշ աստիճանավոր անձինք տառապում են մանիքեցիների[2] աղանդով։ Սկզբում նա նրանց հորդորում է, կոչ է անում, խնդրում հեռանալ այդ պիղծ աղանդից՝ նրանց պարզ ցույց տալով անաչառ Աստծո սարսափելի դատաստանը, հավիտենական դժոխքը, անմար հուրը, որ Աստված պատրաստել է սատանայի և նրա դևերի համար, բոլոր նրանց համար, ովքեր մերժում են Նրա սուրբ հոգով ճշմարիտ և ոչ երևակայական մարդեղացումը Կույսից՝ ի փրկություն և ի վերստին կոչումն մարդկության։ Երբ նա տեսավ, որ նրանք ավելի նախանձախնդրությամբ են պաշտպանում խաբեությունն ու չեն ուղղվում, հրաժարվեց նրանց հետ մտերիմ լինելուց։ Դրա համար ահա այդ վատթարներից վատթարները և մոլեգնության անունը կրողները[3], այդ բարերարին, իրենց երկրի այդ պիտանի և հեզ առաջնորդին, իշխանին ու սատարին, Աստծո կողմից հանդես եկողին, ո՛վ հիմարություն, թաքուն ու նենգ կերպով մտածեցին թշնամիների ձեռքը հանձնել։ Իրենց թշվառական հոգում հղացան և արդարի դեմ նենգամտությունը երկնեցին, ինչպես Հուդան անօրեն մատնությունը։ Թշնամիների դեմ ունեցած մի ընդհարման ժամանակ նրան հանձնում են իրենց աղանդակից մանիքեցիներին, որոնք իրենց ամբարշտությամբ հրաժարվել էին քրիստոնյաների ավանդույթներից ու երկրից, ենթարկվել էին Հագարից ծագող արյունարբու ցեղերին... Խաղաղության մարդը, բարեպաշտության զորավիգ Կալլիստոսը, համաձայն Աստծո սահմանածի, նույն նենգ եղանակով, ինչ իր Տերը, մատնվում է ամենաթշվառական Կարբեասի իշխանության ներքո գտնվող ապստամբների ձեռքը։ Սկզբում նրան և նրա փոքրաթիվ ծառաներին դատապարտում են բանտարկության և երկաթե կապանքների։ Նա քաջաբար տարավ այդ փորձությունները և ասում էր. «Եթե Քո անվան համար, Տե՛ր, մահվան ստվերի միջով անգամ ընթանամ, չեմ երկյուղի փորձություններից, քանզի Դու ինձ հետ ես»։*

*Հագարացիների ցեղապետն[4] իմանալով նրա մասին, իսկույն կարգադրում է նրան կապանքների մեջ Ասորիք տանել, երանելի*

*մտերիմներ, Քրիստոսի քաջ մարտիրոսներ Թեոդորոսին, Կոստանդի-նին, Թեոփիլոսին և Բասոեսին միանալու: Այդ մարդիկ վեց տարի էր, ինչ Ամորիոնի առումից հետո բանտում, կապանքների մեջ, սովից ու գետնին պառկելուց տառապում էին... Ահա քրիստոնյա զորավարնե-րին է միանում Քրիստոսի կամքով Կողոնիայի դուքսի պաշտոնը վա-րած մարդը...:*

## էջ Д. 52

*... Քառասուներկու սուրբ մարտիրոսները նահատակվեցին 6353 թվականի մարտի 6-ին, ինդիկտիոնի 6-րդ տարին, երբ հռոմայեցինե-րի վրա թագավորում էին Միքայելը, Թեոդորան և Թեկլան...*[5]*:*

*1. Բյուզանդական Թեոփիլոս կայսրը (829–842):*

*2. Իմա՝ պավլիկյանների:*

*3. Բառախաղ. մանիքեցի անունը բխեցնում է հունարեն «մանիա»՝ մոլեգնություն բառից:*

*4. Իմա՝ խալիֆան:*

*5. Այսինքն՝ 845 թվականին: Հիշյալ անձնավորություններն են. Միքայել III կայսրը (842–867), նրա մայրը՝ հայազգի Թեոդորան (842–856) և Թեոփիլոսի ու Թեոդորայի դուստր Թեկլան:*

## *7. ՀՈՎՍԵՓ ԳԵՆԵՍԻՈՍ*

***Գենեսիոսը Կոստանդին VII Ծիրանածինի ժամանակակիցն է: Նա բյուզանդական արքունիքում բարձր դիրք ուներ: Նրա պատմական երկը, որ վերնագրված է «Թագավորություններ», գրված է 944–959 թթ. միջև և բաղկացած է չորս գրքից: Այն ընդգրկում է Լևոն V Հայկազնից մինչև Վասիլ I Մակեդոնացի կայսեր մահն ընկած դեպքերի պատմությունը, այն է՝ 813–886 թթ.: Օգտագործել է Գեորգ Վանականի աշխատությունը, Իգնատիոսի աշխատասիրած Նիկեփոր պատրիարքի կենսագրությունը, Նիկետաս Պափլագոնացու չարա-դրած Իգնատիոսի կենսագրությունը, Թեոփանեսի Շարունակողի օգտագործած աղբյուրները, ինչպես և բազմաթիվ ավանդություններ ու պատմություններ:***

***Թարգմանությունը կատարված է բնագրի հետևյալ հրատարա-կությունից.*** *Genesii Regum, ex recognitione* ***Caroli Lachmani,*** *Bonnae, 1834:*

## Գիրք Բ, էջ 33


Լևոն V Հայկազնի դրամը

*...Նա[1] հագարացիների հետ դաշինք է կնքում՝ նրանց առաջնորդի[2] գիտությամբ, Անտիոքի պատրիարք Հոբի[3] ձեռքով կայսերական թագ կապում և հագարացիներից, հնդիկներից, եգիպտացիներից, ասորեստանցիներից, մարերից, աբազգներից, զեխերից, իբերներից, կաբիրներից, սլավներից, հոներից, վանդալներից, գետերից, Մանիի պիղծ աղանդը դավանողներից, լազերից, ալաններից, խալդերից, հայերից և այլ տարբեր ժողովուրդների ներկայացուցիչներից հսկայական զորք հավաքելով, տիրում է համայն Արևելքին, իսկ վերջում ողողում Թրակիայի շրջանները, փորձում գրոհով տիրանալ Բյուզանդիոնին...:*

## Գիրք Դ, էջ 115

*... Մեր գլխին թափվեցին նաև Տիվրիկից եկող փորձանքները: Այդտեղի չարագործներն օգտվեցին և՛ ցամաքում, և՛ ծովում հագարացիների դեմ մղվող պատերազմում մեր զբաղվածությունից: Սակայն կայսրը Աստծո օգնությամբ և զորավարների հմտությամբ հաղթահարեց այդ ամբարտավաններին...:*

## Գիրք Դ, էջ 120–126

*... Տիվրիկի աղանդավորների՝ Պողոս Սամոսատցու, Կուբրիկոսի, Մոնտանոսի և այլ տարբեր աղանդապետների հետևորդների դեմ հաղթանակ տարվեց: Սրանք անցյալում շատ էին ամբարտավանացել, բայց հետագայում Աստծո հզոր բազկի և կայսեր[4] բազում աղոթքների ու հսկումների օգնությամբ հաղթահարեցին: Կայսրը նրանց վրա արշավեց երկու անգամ: Առաջին անգամ նա համայն շրջաններ գերեվարությամբ ու հրկիզմամբ ամայացրեց, այնուհետև որոշ ժամանակ պատերազմ մղեց Տիվրիկի դեմ: Անհաջողության մատնվելով, նա վերադարձավ մայրաքաղաք և մտնելով իր իսկ կառուցած Ս. Հրեշտակապետաց տաճարը, սրտակոտոր ու հոգեբուխ պաղատեց նրանց, որպեսզի նախքան մեռնելն իրեն արժանացնեն տեսնելու Տիվրիկի կործանումը: Դրանից հետո նա բազում զորքերով դարձյալ արշավեց նրանց դեմ, մեծ կորուստներ պատճառելով: Այդ ընթացքում (աղան-*

դավորների) գլխին երկնքից թափվեց ամենասարսափելի որոտ, այդ որոտից Տիվրիկի տները երերացին, բնակիչները զարհուրած, ենթադրելով, որ դա աստվածուստ է, իրենց դեմ է ուղղված, մի մասը կայսեր կողմն անցավ՝ ողորմածություն աղերսելով, մյուսն էլ փախուստի դիմեց Ասորիքի խորքերը: Փախուստն այնպիսի ծավալ ստացավ, որ քիչ էր մնացել նրանց քաղաքը մարդաթափ լինի, քաղաք, որին տիրում էր նրա պաշտպան սարսռած Խրիսոխիրը:

Այս ամբարտավանը՝ Կարբեասի և Կալլիստոսի հետ (ինչպես և սրա հայրը[5]) , քրիստոնյաների գլխին բազում փորձանքներ բերեց, հասավ մինչև Նիկոմեդիա և Նիկիա, դեռ ավելին, ավարառեց Թրակեսիոն բանակաթեմը, հասավ մինչև Հովհան Աստվածաբանի թեմը, որի տաճարը նրա զինվորները մտցրին իրենց ձիերին և մնացած գումակը՝ լուտանքներ թափելով: Կայսրը, լինելով խաղաղասեր և խոկապես ողորմած, Խրիսոխիրին նամակ է գրում՝ հաշտություն կնքելու կոչով, համաձայն ասույթի. «Շնորհել միմեանց որպէս եւ Աստուած Քրիստոսիւ շնորհեաց մեզ»[6], բավարարվել ձեռք բերածով, ստանալ իրենից ոսկի, արծաթ և հանդերձներ, վերջ տալ քրիստոնյաների գերեվարությունն ու կոտորածը: Սակայն լկտին և անհավատը չընդառաջեց խաղաղարար խոսքերին և կայսրին պատասխանեց այսպես. «Ով կայսր, եթե կամենում ես մեզ հետ հաշտություն կնքել, հրաժարվի՛ր Արևելքի վրա ունեցած քո իշխանությունից և տիրի՛ր Արևմուտքի վրա, ահա այդ դեպքում կխաղաղվենք քեզ հետ, հակառակ դեպքում կջանանք քեզ գահընկեց էլ անել»: Կայսեր համար պարզ դարձավ, թե ինչ անմիտի հետ գործ ունի, դրա համար լռեց, այլևս նրան պատասխան նամակ չգրեց:

Երկու տարի անց Խրիսոխիրն իր զորքերով դուրս եկավ, հասավ մինչև Անկյուրա քաղաքը, հենց Կոմմատա[7] և հսկայական ավար ձեռք բերելով՝ վերադարձավ: Սխոլերի դոմեստիկոսը[8] մեկ մղոն հեռավորության վրա նախապատրաստվեց հետապնդելու: Նա երկյուղում էր մոտիկից հետապնդել: Խրիսոխիրը, հասնելով Խարսիանոն[9] բանակաթեմը, վրան է խփում Ագրանայում, իսկ դոմեստիկոսը՝ Սիբորոնում: Նա հրաման տվեց Արմենիակների և Խարսիանոն բանակաթեմերի զորավարներին. «Վերցրե՛ք ձեզ ենթակա զորահրամանատարներին և փորձառու մի քանի հեծյալ, մոտավորապես 12 օրվա պարեն և Խրիսոխիրին հետապնդեցե՛ք մինչև Վաթիռիաքս[10] (վայրը): Եթե նա իր բանակի մի մասը, որին հնարավոր է հաղթահարել, ուղարկի Արմենիակների կամ Խարսիանոն բանակաթեմի (զորքերի) վրա, մեզ տեղյակ պահեցե՛ք, իսկ եթե հեռանա Վաթիռիաքսից, վերադարձե՛ք մեզ մոտ»: Խրիսոխիրը երեկոյան շարժվեց, վրան

*խփեց ցածրադիր տեղում, իսկ զորավարները բարձրացան լեռան գագաթը և բանակեցին Զոգոլոեննոն կոչվող վայրում: Այն քարքարոտ, դժվարամատչելի, խիտ անտառներով մի վայր է: Հիշյալ զորավարները, երբ հանգստանում էին այնտեղ, զորահրամանատարների միջև տղամարդկանց հատուկ բանավեճ ծագեց, թե ովքեր են ավելի քաջ՝ Արմենիակների բանակաթեմից ծագողները, թե՞ Խարսիանոնի: Երբ խարսիանոնցիք վիճում էին, իրենց քաջարի համարում, չէին ուզում խիզախության դափնիներն ուրիշին զիջել, արմենիակները, դիմելով նրանց ասացին. «Ի՞նչ եք դատարկ վիճում արիության շուրջ: Երկուսս էլ թշնամիների հետ կռվի ենք բռնվելու, հենց այդտեղ էլ կերևա ով է ավելի քաջ»: Զորավարները, լսելով նրանց վեճի մասին, տեսնելով, թե ինչպես այդ վեճը գրգռում է զինվորների եռանդը, ասացին. «Զանազիր եղե՛ք, ո՜վ զինակիցներ, որպեսզի Աստծո օգնությամբ ջարդ տանք թշնամուն»: Դրան զինվորները արիաբար պատասխանեցին. «Այո՛, կայսրին տված մեր ամենամեծ երդումով հավաստիացնում ենք ձեզ, որ կռվի կբռնվենք նրանց հետ: Վայրը, որտեղ մենք ամրացել ենք, ամենաանառիկներից է, որտեղից եթե նրանց դեմ կարողանանք որևէ սխրանք գործել, այն մեզ համար մրցանակ կհամարենք, իսկ նրանք մեզ ոչ մի վնաս չեն կարող հասցնել»: Երկու զորավարները շուրջ վեց հարյուր հոգի առանձնացրին, մնացածներին դրոշներով թողեցին իրենց հրամանատարների վրաններում՝ այսպես կարգադրելով. «Մենք զորքով վազքով կմոտենանք (թշնամուն), երբ մեր վրա շարժվի, մենք կընդունենք մարտը: Արդ, երբ նրանք հարձակվեն մեր վրա, դուք դիմացից բարձրագոչ աղաղակ բարձրացրեք, մեծաթիվ զորքի առկայության պատրանք ստեղծեք, որպեսզի նրանք կարծեն, թե բանակաթեմերի զորքերով սխոլերի դոմեստիկոսն է տեղ հասել»: Այս խորհուրդը տալով, զորավարները շարժվեցին մոտեցան թշնամիներին և, նախքան արևը ծագելը, թմբկահարությամբ խուժեցին նրանց վրա: Նրանց մի մասը Խրիսոխիրի հետ...[11], իսկ մյուսը՝ գրաստներն էր բեռնաթափում: Ահա երբ նրանք դրանով էին զբաղված, զորավարներն իրենց զորահրամանատարներով նրանց վրա հարձակվեցին և ուժգին գոռալով «Խաչը հաղթե՛ց», մարտականորեն խփեցին թմբուկները: Անակնկալ հարձակումից սարսափած, նրանք առանց ետ նայելու փախուստի դիմեցին, անգամ չէին էլ նայում, կամ ստուգում, ովքե՞ր են իրենց հալածում: Զարաչար կոտորվելով Վաթիռիաքսից մինչև Կոստանդնի լեռ կոչվող տեղը երեսուն մղոն տարածության վրա, նրանք հալածական եղան:*

*Խրիսոխիրը վճռում է մի քանի հոգով փախուստի դիմել: Նրա ետևից հասնում է գլխարկ հագած Պուլլադեսը[12], այդպիսի նշանավոր*

*անուն ուներ նա: Անցյալում նա Տիվրիկում գերի էր և իր սրամտությամբ Խրիսոխիրի մտերիմն էր դարձել: (Պուլլադեսը) տեսնելով նրան և ճանաչելով, բարձր գոռաց. «Ահա՛ զորավարները, ահա՛ սխոլերի դոմեստիկոսը»: Խրիսոխիրը պատասխանեց Պուլլադեսին. «Ով թշվառական Պուլլադես, ես քեզ որևէ վատություն արե՞լ եմ: Ընդհակառակը, քեզ շատ լավություններ եմ արել, հեռացի՛ր, ինձ խոչընդոտ մի՛ դարձիր»: Պուլլադեսն ասաց. «Ես գիտեմ, Խրիսոխիր, որ դու ինձ շատ լավություններ ես արել, բայց հույս ունեմ իմ Փրկիչ Աստծով այսօր քեզ փոխհատույց լինել»: Խրիսոխիրը ձիավարելիս հանդիպում է մի փոսի, որի վրայով նրա ձին չէր համարձակվում թռչել և ծառս եղավ: Խրիսոխիրը ուշադրություն չէր դարձնում Պուլլադեսի վրա, նա իր դիմացն էր նայում, որպեսզի փոսի մեջ չգլորվի: Պուլլադեսն աննկատ մոտեցավ և նիզակով խոցեց նրա թևատակին: Նա ստացած վերքից չփոթվեց, այդ պահին ձին գայթեց և նրան իր վրայից ցած գլորեց: Խրիսոխիրի ամենամտերիմ սպասավորը՝ անունը Դիակոնիցես (երջանկահիշատակ Լևոն կայսրը[13] սրան, երբ նա պավլիկյանների պիղծ աղանդն ուրացավ և բարեպաշտ դարձավ, մենսուրատորի[14] աստիճան շնորհեց, լատիներեն աստիճանն այդպես է կոչվում), Խրիսոխիրի գլուխը դրեց իր ծնկներին և սկսեց խնամել նրան: Այդ պահին վրա հասան զորավարները, բռնեցին (Խրիսոխիրին) և գլուխը կտրելով, անհապաղ, որպես ընծա աստվածապսակյալ արքա Վասիլին ուղարկեցին...:*

*1. Նկատի ունի Թովմա Գազիրացուն, որը ապստամբություն էր բարձրացրել Միքայել II Թլվատի (820-829) դեմ: Գենեսիոսը Թովմային հայազգի է համարում (էջ 8). «... Θωμᾶν τὸν ἤπὸ λίμνης Γαζουροῦ, καὶ αὐτὸν ἐξ ᾿Αρμενίων τὸ γένος κατάγοντα»ն:*

*2. Իմա՝ խալիֆա Մամունի (813-833):*

*3. Անտիոքի պատրիարք Հոբն աթոռակալել է 813/814-844/845 թվականներին:*

*4. Վասիլ I Մակեդոնացին (867-886):*

*5. Բնագրից պարզ չէ ո՞ւմ հոր մասին է խոսքը՝ Խրիսոխիրի, թե՞ Կալլիստոսի:*

*6. Եփես., Դ, 32:*

*7. Լևոն VI-ի թագավորության ժամանակ Բուկելլարների և Անատոլիկոն բանակաթեմերից յոթ շրջան մտան Կապադովկիա բանակաթեմի իրավասության տակ և կազմեցին մեկ տուրմա՝ Կոմմատան:*

*8. Սպարապետը:*

*9. Խարսիանոն բանակաթեմի կազմում էին Առաջին Կապադովկիան և Երկրորդ Հայքի հարավային կեսը: X դարում նրա կենտրոնը Կեսարիան էր:*

*10. Որոշ հետազոտողներ տեղադրում են ժամանակակից Ենի-խանի տեղում, Սեբաստիայից հյուսիս-արևմուտք:*

*11. Այստեղ բնագիրը եղծված է:*
*12. Հավանաբար, պարսկերեն Փոլադն է (հայերեն՝ պողպատ):*
*13. Լևոն VI (886-912):*
*14. Զինվորական աստիճան:*

## 8. ԿՈՍՏԱՆԴԻՆ VII ԾԻՐԱՆԱԾԻՆ

***Բյուզանդական կայսր (913-959 թթ.), Վասիլ I Հայկազնի թոռը: Նշանավոր էր հատկապես իր գրական գործունեությամբ: Գրել է բազմաթիվ արժեքավոր երկեր, որոնցից կարևորն են «Կայսրության կառավարման մասին» գործը, իր պապի՝ Վասիլ I-ի կենսագրությունը, որ կազմել է «Թեոփանեսի Շարունակող» պայմանական խորագիրը կրող աշխատության հինգերորդ գիրքը (տե՛ս «Թեոփանեսի Շարունակող»-ի տակ), «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին», «Բյուզանդական կայսրության բանակաթեմերի մասին» աշխատությունները և այլն: Կոստանդին Ծիրանածինն ունեցել է գիտական աշխատողների մի ամբողջ խումբ, որի ջանքերով կազմվել են պատմական, իրավագիտական, երկրագործական, օդերևութաբանական և այլ բովանդակության բազմաթիվ աշխատություններ: Ստորև բերվում է «Բանակաթեմերի մասին» աշխատությունից մի հատված, թարգմանված բնագրի քննական հրատարակությունից.*** *Constantino Porfirogenito De Thematibus. Introduzione, testo critico, commento a cura di* ***A. Pertusi*** *(Studi e Testi 160), Città del Vaticano, 1952.*

### ՏԱՍՆԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ ԿՈՂՈՆԻԱ

*Կողոնիան զառիթափ (վայրում գտնվող) չափ ամուր բերդ է: Այդ քաղաքի անունից էլ ահա շրջանն ստացավ իր հորջորջումը. հույները բարձրադիր և վեր խոյացող վայրերին կոլոնոս էին կոչում: Սրանք Փոքր Հայքի հողերն են և ծայր առնելով Գրիգոր Սքանչելագործի հայրենիք Նեոկեսարիայում և այսպես կոչված Ճաղատ լեռան մոտ, ընդարձակվում են դեպի Արաբրակենացիների քաղաքը՝ հռչակավոր վկա Եվստրատիոսի հայրենիքը, և հասնում մինչև Նիկոպոլիս և Տիվրիկ կոչվածը, որը գտնվում էր մանիքեցիների վտահամբավ առաջնորդ Խրիսոխիրի և նրանից ավելի ամբարիշտ՝ Կարբեասի իշխանության ներքո, մանիքեցիների, որոնց քրիստոսասեր տեր Վասիլը՝ իմ*

*պապը, մեր կայսրերից բարեբախտն ու ամենաբարեպաշտը գլխովին ոչնչացրեց և դժոխքի տարտարոսներն ուղարկեց: Ահա այսքանը Կոլոնիայի մասին: Ինչպես նախապես ասացինք, բանակաթեմը ծագում է Առաջին Հայք նահանգից:*

## 9. ԹԵՈՓԱՆԵՍԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՂ

***«Թեոփանեսի Շարունակող» կամ «Թեոփանեսին հաջորդող գրողներ» պայմանական վերնագրով հայտնի է անանուն ժամանակագիրների մի խումբ, որ Կոստանդին VII Ծիրանածինի հրամանով շարունակեցին Թեոփանեսի «Ժամանակագրությունը»: Ամբողջ գործը վեց գրքի է բաժանված, որոնցից յուրաքանչյուրը բովանդակում է մեկ կայսրի պատմություն, այն է՝ Լևոն V (813-820), Միքայել II (820-829), Թեոփիլոս (829-842), Միքայել III (842-867), Վասիլ I (867-886) և Լևոն VI (886-912): Վերջին գրքում շարունակաբար տրվում է Ալեքսանդրի (912-913), Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանության (913-920), Ռոմանոս I-ի (920-944), Կոստանդին Ծիրանածինի երկրորդ մենիշխանության (944-959) և Ռոմանոս II-ի (959-963) պատմությունը: Հինգերորդ գիրքը՝ Վասիլ I-ի կենսագրությունը գրել է անձամբ Կոստանդին Ծիրանածինը, վեցերորդը՝ Թեոդորոս Դափնոպատեսը: Վեցերորդը հետագայում է կցվել ամբողջ գործին:***

***Թարգմանությունը, որ լույս է տեսել «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարով (№ 15. «Բյուզանդական աղբյուրներ». Ե. Թեոփանեսի Շարունակող, Երևան, 1990) կատարված է բնագրի հետևյալ հրատարակությունից.*** *Theophanes Continuatus, Chronographin, ex recognitione* ***I. Bekkeri,*** *Bonnae, 1838:*

### *Գիրք 4*

*16. Ահա այսպիսի փայլուն հաջողություններ ձեռք բերվեցին Արևմուտքում[1], որոնց առթիվ [Թեոդորայի] համբավը տարածվեց ամենուր: Այդ հաջողություններից բերկրացած և կարծես ցանկանալով հաղթական ավելի մեծ հուշարձան կանգնեցնել, նա[2] փորձեց Արևելքի պավլիկյաններին էլ բարեպաշտության բերել, իսկ եթե դա չհաջողվի՝ կոտորել ու ոչնչացնել նրանց: Դա մեր երկիրը ողողեց*

*բազում փորձանքներով: Կայսրուհին մի քանի իշխանավորներ ուղարկեց (նրանց անուններն էին՝ Արգիրոսի որդի, Դուկասի որդի[3] և Սուդալիս), որոնք սրանց ցցահան էին անում, սրի քաշում, ծովահեղձ անում: Կոտորվածների թիվը շուրջ տասը բյուր հոգի էր, նրանց ունեցվածքը բռնագրավվեց և կայսերական գանձարան մուտք գործեց: Անատոլիկոն բանակաթեմի զորավար Թեոդոտոս Մելիսսենոսի մոտ ծառայում էր Կարբեաս անունով մեկը, որ պրոտոմանդատորի աստիճանն ուներ: Նա դավանում էր պավլիկյանների հավատքը և դրանով պարծենում: Սա, լսելով, որ իր հայրը, ցցահան է արվել, այդ բանը մեծագույն դժբախտություն համարեց և, գործերը կարգի բերելով, իր հինգ հազար աղանդակիցների հետ փախավ Մելիտենեի այն ժամանակվա ամիրա Ամերի[4] մոտ, այնտեղից էլ՝ ամերմումնիի (խալիֆայի), որի կողմից փառավոր ընդունելության արժանացան: Փոխադարձ ապահովության մասին համաձայնության գալով, շատ չանցած նրանք դուրս եկան՝ ավարառելու Հռոմեական կայսրության տարածքը: Աղանդավորներն այնքան բազմացան, որ սկսեցին իրենց համար քաղաքներ կառուցել՝ այսպես կոչված Արգաուսը և Ամարան: Երբ սկսեցին այնտեղ հոսել նույն հերձվածը դավանողների նոր բազմություններ, նրանք հիմնադրեցին մի այլ [քաղաք], որը Տիվրիկ կոչեցին: Նրանք անչափ բազմացան և հանդգնում էին այդ քաղաքներից արշավանքներ գործել և անվերջ ավարառել Հռոմեական երկրի տարածքը, նրանց հետ նաև Մելիտենեի [ամիրա] Ամերը (սրա անունը շատերն աղավաղելով, Ամբրոն կոչեցին), Տարսոնի [ամիրա] Ալին[5] և նույն ինքը՝ Թշվառական Կարբեասը: Սրանցից Ալին, որն ուղարկվել էր հայոց ինչ-որ նահանգ կառավարելու, խկույն տեղում սպանվում է, իր ողջ բանակն էլ բնաջնջվում, իսկ Ամերը իր կառավարչակից Սկլերոսի (նա այդպես էր կոչվում) հետ թշնամացած, նրա հետ ներցեղային պատերազմի բռնվեց և արյունաքամ էր լինում: Նա գտնում էր, որ հազիվ նրա դեմ կարող է պատերազմել և ոչ ուրիշների դեմ էլ: Նրանց հակամարտությունն այն աստիճան սաստկացավ, այնքան համառությամբ էին նրանք միմյանց դեմ մաքառում, որ հիսուն հազար հոգուց մի փոքր ավելի թիվ կազմող նրանց ռազմիկներից հազիվ տասը հազարը մնաց: Երբ [Ամերն] իր թշնամիներին ընկճեց, միանալով Կարբեասին դարձյալ հանդգնեց հռոմայեցիների դեմ զենք ճոճել: Նրանց դեմ դուրս եկավ Պետրոնասը, որն այն ժամանակ վարում էր դոմեստիկոսի պաշտոնը: Այդ պաշտոնը Վարդասին էր տրված, բայց քանի որ նա որպես (Միքայել կայսեր) խնամակալ զբաղված էր, նպատակահարմար*

*գտավ այդ պաշտոնի իրական վարումը թողնել իր եղբոր, Թրակեսիոն բանակաթեմի զորավար Պետրոնասին:*

*23. Ինչ վերաբերում է Վարդասին, ապա նա ամբողջությամբ կլանված էր կայսրության խնամակալի[6] և կառավարչի պարտականություններով: Նրան մյուսներից ավելի էին սիրում, որպես կայսեր ազգականի: Կարծես որպես իր քրոջ դեմ տարած հաղթանակի մրցանակ[7], նա ստացավ նաև կյուրոպաղատի պատվաստիճանը և, ինչպես ասվեց, աղվամազը դեռ նոր բուսնող Միքայելի հետ ամբողջ զորքով պատերազմի գնաց իսմայելացիների և Ամերի դեմ: Ոտք դնելով թշնամու տարածքը, նրանք հասնում են ու պաշարում Սամոսատ կոչվող անառիկագույն քաղաքը: Այնտեղ նրանք համոզվեցին, որ արդեն գործ ունեն ոչ թե Թեոդորայի, այլ շատ խորամանկ մարդկանց հետ: Պաշարման երրորդ օրն էր, կիրակի, և պետք է կատարեին սուրբ հաղորդության խորհրդի արարողությունն ու հաղորդվեին, սակայն այդ բանն անում էին՝ առանց ձեռք առնելու նախազգուշական միջոցները, կամ էլ, անփորձ լինելով, բանի տեղ չէին դնում քաղաքում պաշարվածներին: Նրանք ենթադրում էին, որ նրանցից և ոչ ոք չի հանդգնի հռոմայեցիների կայսեր վրա ձեռք բարձրացնել: Եվ ահա հաղորդության սուրբ խորհրդի պահին [թշնամիները] քաղաքի ամեն տեղից զենքերով դուրս խուժեցին: Չկար մի հռոմայեցի, որ փախուստի չդիմեր: Ինքը՝ Միքայելը մի կերպ ձի նստեց, նա չփորձեց անգամ ընդդիմակայել և, փախուստի դիմելով, մի կերպ փրկվեց, տեղում թողնելով և՛ վրանները, և՛ սպասարկող անձնակազմը: Պատմում են, թե այնտեղ ի միջի այլոց աչքի ընկավ և նախապես հիշատակված Կարբեասը, Տիվրիկի կառուցողը, որը կոտորեց ոչ միայն բազում չարքայինների, այլև գերեց մեծամեծ զորավարների՝ Աբեսալոմ Ցանգոտուբոսին, Սիոն Պալատինոսին և այլ, շուրջ հարյուր փոխզորավարների ու տուրմարխների[8]: Հիշյալ զորավարները պատերազմի ավարտից հետո բանտ նետվեցին, նրանց ազգականները որպես փրկագին Կարբեասին բազում դրամ ուղարկեցին:*

## Գիրք 5

*37. Ահա կարգի բերելով քաղաքի գործերը և ազատվելով այլ հոգսերից, գարնան սկզբին նա (Վասիլը)[9] զինվեց և գլխավորեց բանակը, ցանկանալով, որպես իսկական արքա, հարազատ ժողովրդի համար իրեն վտանգների ենթարկել. նա կամովին իր վրա վերցրեց տառապանքների ու չարչարանքների բեռը՝ հպատակ ժողովրդի անվտանգության համար: Այն ժամանակները Տիվրիկի առաջնորդը,*

*որին Խրիսոխիր էին անվանում, իրեն քաջ ու խոհեմ մարդ համարելով, դաժան փորձությունների էր ենթարկում հռոմայեցիների երկիրն ու մարդկանց, ամեն օր գերեվարում բազում գյուղացիների և այդ առթիվ անչափ փքվել էր ու գոռոզացել: Ահա այդ փքվածն ու ամբարտավանը չհամարձակվեց բացահայտ դիմադրել իր վրա արշավող քաջ զորքին, դիմադրել խիզախ ու խոհեմ կայսեր: Նա նահանջեց, մտադիր լինելով պաշտպանել և ամրացնել իր քաղաքը միայն: Կայսրը ոչ մի խոչընդոտի չհանդիպելով, ասպատակեց, գրավեց, ավերեց ու հրկիզեց Խրիսոխիրին ենթակա բոլոր շրջանները և գյուղաքաղաքները, ձեռք բերեց անհամար ավար ու գերիներ: Նա հարձակվեց հենց Տիվրիկ քաղաքի վրա, փորձեց նետաձգությամբ ու ոչ երկարատև պաշարմամբ գրավել այն: Բայց ավելի երկարատև պաշարման մտքից նա հրաժարվեց, որովհետև համոզվեց, որ դժվար է քաղաքը գրավել, պարիսպներն ամուր էին, պաշտպանվող բարբարոսներն անթիվ, ապա նաև առատ պարենով ապահոված: Այդ բոլորից բացի իր մեծաքանակ զորքը կարճ ժամանակվա ընթացքում շրջանն ամբողջությամբ ամայացրել էր և ողջ պարենը գրեթե սպառել: Վասիլը ավերակ դարձրեց Տիվրիկի շուրջ գտնվող Աբարա, Սպաթե և մի քանի այլ ամրոցներ և, վերցնելով իր ոչ մի կորուստ չկրած ամբողջ զորքն ու ձեռք բերած ավարն ու գերիներին, որոնց մասին խոսք եղավ վերևում, վերադարձավ:*

*38. Իսմայելացիների Տարանտա կոչվող մյուս քաղաքը, Տիվրիկի մեծ կոտորածը տեսնելով, դեսպաններ ուղարկեց կայսեր մոտ խաղաղություն աղերսելով և առաջարկելով դաշնակցել: Ամենահզոր կայսրն ինչքան որ դիմադրություն ցույց տվողների հանդեպ խիզախություն էր ցուցաբերում, այնքան էլ զիջողականություն՝ ենթարկվողներին: Նա ընդառաջեց դեսպաններին, խաղաղություն խնդրողներին խաղաղություն շնորհեց և նրանց այսուհետև թշնամիներից դաշնակից դարձրեց: Այդ բանից հետո շատերը, այդ թվում և Կուրտիկ անունով մի հայ, որն այն ժամանակ տիրում էր Լոկանային և շարունակ ասպատակություններ էր գործում հռոմեական երկրի ծայրագույն շրջանները, դիմեց կայսեր, նրան հանձնեց իր քաղաքը, զենքերը և իր ժողովրդին, հպատակվեց ինքնակալին. նա հիացել էր քաջ, միաժամանակ բարի, բայց նույն ժամանակ արդար կայսեր վրա:*

*40. Կայսրն անցնելով Եփրատը, խսկույն գրավեց Ռապսակիոն կոչվող ամրոցը: Նա Խաղտիքի ու Կոլոնիայի բանակաթեմերի զորքերին հատուկ հրաման տվեց՝ ասպատակել Եփրատ և Արսինոս գետե-*

*րի միջև ընկած շրջանները և այդ զորքերի օգնությամբ բազում ավար ու գերիներ ձեռք բերեց, գրավեց Կուրտիկիոսի Խախոն, Ամեր, Մուրինիքս և Աբդելա ամրոցները: Ինքն անձամբ Մելիտենեի վրա հարձակվեց, որտեղ բարբարոսների և զինվորների հսկայական բազմություն կար, որոնք բարբարոսաբար աղաղակներով ու գոչյուններով քաղաքի առջև նրան դիմադրություն ցույց տվեցին: Կայսրը հենց այնտեղ ցուցաբերեց իր անձնական առաքինությունները. նրա հմտության ու քաջության վրա շատ հիացան ոչ միայն զինվորները, այլև թշնամիները: Նա խոհեմորեն ու արիությամբ թշնամիների դեմ մարտի բռնվեց, ձեռնամարտում աչքի ընկավ իր քաջությամբ ու համարձակությամբ, վտանգավոր պահին հանդես բերեց պադարյունություն ու անվեհերություն, առաջինն ինքն իր դեմ գտնվողներին փախուստի մատնեց և գլխովին կոտորեց: Իր զինվորները, նույն ձևով յուրաքանչյուրն իր դեմ գտնվողներին կոտորելով, հալածեցին մինչև քաղաքը: Քաղաքի առջև գտնվող դաշտում փռվեցին բազում դիակներ, պարիսպների առջևից հոսող առուն կարմիր ներկվեց, շատերը գերի վերցվեցին, ուրիշները վախից անձնատուր եղան, իսկ մնացածներն էլ փակվեցին քաղաքում և ամենևին չէին մտածում դուրս գալ: Այստեղ կայսրը մտածում էր բաբաններ, ամեն տեսակի պաշարողական մեքենաներ բերել և պաշարողական գործում քաջություն ու կորով ցուցաբերել, բայց տեսավ, որ քաղաքն ամուր պարիսպներով է շրջափակված, պարիսպների վրա պաշտպանվողների մեծ բազմություն կա և համոզվեց, որ դժվար է գրավել քաղաքը: Բացի այդ, նա դասալիքներից տեղեկացավ, որ քաղաքն ապահովված է նաև առատ պարենով, որ չի վախենում երկարատև պաշարումից, դրա վրա ահա նա շարժվեց այնտեղից ու հարձակվեց մանիքեցիների երկրի վրա: Նա կտրատեց այդ երկրի ծառերը, հրկիզեց տները և ամեն ինչ ավերեց, հրի մատնեց և գետնին հավասարեցրեց նրանց Արգաութ կոչվող ամրոցը[10], ապա նաև Կուտակիոն, Ստեփանոս և Ռախատ կոչվողները, որից հետո իր զինվորներին առատ պարգևներ տվեց, յուրաքանչյուր աչքի ընկածին պարգևատրեց և մեծ ավարով ու հաղթական դափնիներով թագավորանիստ քաղաքը վերադարձավ:*

*41. ... Կայսրն առանց զլանալու ամեն օր գնում էր սուրբ և աստվածային տաճարը և աղերսում Տիրոջ՝ Միքայել հրեշտակապետին և Եղիա մարգարեին Աստծո միջնորդներ վկայակոչելով, որ չվախճանվի, քանի չի տեսել Խրիսոխիրի կործանումը և նրա պիղծ գլխին չի գամել երեք նետ: Ինչ որ կատարվեց հետագայում: Վերոհիշյալ Խրիսոխիրը հաջորդ տարին ներխուժեց Հռոմայեցիների երկիրը և*

*սկսեց ասպատակել այն: Ընդունված կարգի համաձայն կայսրը նրա դեմ է ուղարկում սխոլերի դոմեստիկոսին: Նա իր հետ վերցրեց հռոմեական ողջ զորքը, բայց որովհետև վախենում էր Խրիսոխիրի հետ բացահայտ ճակատ առ ճակատ մարտի բռնվել, հռոմեական զորքով առայժմ հետևում էր նրան որոշ հեռավորության վրա, մասնակի հարձակումներ գործում նրա վրա և հնարավորություն չէր տալիս Խրիսոխիրին աներկյուղ տարածվել երկրով մեկ: Բարբարոսը մեկ գործի էր անցնում, մեկ հանգիստ մնում, բայց վերջը, քանի որ այդ բանին էր ստիպում նաև ժամանակը, որոշեց իր երկիրը վերադառնալ: Մեծ ավարով նա իր երկիրն էր շտապում, երբ սխոլերի դոմեստիկոսը երկու զորավարների կարգադրեց, այն է՝ Խարսիանոնի և Արմենիակների բանակաթեմերի, որ յուրաքանչյուրն իր զորամասով հետևեն և հետապնդեն Խրիսոխիրին մինչև Վաթիուիաքս: Եթե նա այնտեղից հռոմեական սահմանների վրա զորք նետի, ապա այդ մասին հայտնեն դոմեստիկոսին, իսկ եթե ուղիղ չարժվի և մուտք գործի իր որջը[11], թողնեն և իսկույն իր մոտ վերադառնան:*

*42. Բարբարոսական զորքը երեկոյան մոտ հասավ Վաթիուիաքս և ճամբարեց լեռան ստորոտում: Հռոմայեցի զորավարները դիրքեր գրավեցին այդ վայրի բարձունքներում: Այն ժամանակ, երբ վերջիններս մտածում էին իրենց անելիքի շուրջը, երկու բանակաթեմերի զինվորների, տաքսիարքոսների[12] և լոխագոսների[13] միջև վեճ է ծագում՝ առաջնության շուրջը: Խարսիանոնցիք իրենց էին վերագրում քաջության մենաշնորհը, իսկ Արմենիակները չէին ուզում նրանց զիջել ռազմական արիության առաջնությունը: Վեճը տաքացավ, կրքերը բորբոքվեցին, երբ Արմենիակների զորաբանակի հրամանատարներն ասացին. «Ինչո՞ւ եք իզուր տեղը խոսքերով հերոս դառնում, սնապարծորեն մենք մեզ գովում: Մարդ գործով պիտի ապացուցի իր քաջ լինելը: Թշնամին մոտիկ է և նրա դեմ կռվելիս կերևան քաջերը, մարտում հանդես բերած արիությունից կարելի կլինի որոշել լավագույններին»: Ահա զորավարներն այս խոսքերը լսելուց հետո, ապա նաև տեսնելով զորքի քաջ կռվելու պատրաստակամությունը, բացի այդ, համոզված լինելով, որ տեղանքն էլ իրենց համար նպաստավոր է (հարթավայրում ճամբարած թշնամու վրա իրենք բարձրից պիտի հարձակվեին), զորքը բաժանում են երկու մասի: Որոշվեց, որ նրա ընտիր մասը՝ շուրջ վեց հարյուր հոգի, զորավարների գլխավորությամբ հարձակվի բարբարոսների զորքի վրա, իսկ հռոմեական զորքի մնացած՝ փոքր մասը բարձունքում մեծաքանակ լինելու պատրանք ստեղծի: Հարմար ժամանակ, ազդանշանը տրվելուց հետո,*

*առաջինները պիտի հարձակվեն թշնամիների վրա, իսկ մնացածները չատ բարձր աղաղակ պիտի բարձրացնեն և հնչեցնեն փողերը. փողերի ձայնին կարձագանքեն լեռները, և աղմուկը չչմեցուցիչ կլինի: Ահա այդ վեց հարյուր հոգին հագնում են իրենց զրահները և գիշերով գաղտագողի մոտենում թշնամու ճամբարին: Նախքան այգաբացը, երբ դեռ արևը լրիվ չէր անցել երկրի ստորին կիսագունդը, մեծ աղմուկ բարձրացնելով և բոլորը միասին «Խաչը հաղթեց» գոռալով, հարձակվում են թշնամու վրա: Նրանց հետ միասին աղաղակ են բարձրացնում լեռան վրա գտնվողները և բոլոր մնացածները: Բարբարոսներն անակնկալից չփոթվեցին, ժամանակ չունեցան մարտաշարք կազմելու, հնարավորություն չունեցան իմանալու իրենց վրա հարձակվող զորքի ճշգրիտ թիվը, ի վիճակի չեղան հանպատրաստից փրկության որևէ այլ ելք գտնելու և փախուստի դիմեցին: Նրանց բոլորի մեջ սարսափ գցողն ու կործանման առաջնորդողը, հիրավի, կայսեր աղոթքներն էին: Հռոմայեցիների մի մասը հարձակման անցավ, մյուսը, որ մարտի չբռնվեց, այն է՝ զորավարները, տագմաները*[14] *և սխոլերի դոմեստիկոսը, կարգադրության համաձայն աղմուկ աղաղակ բարձրացրին, մի բան, որ ավելի մեծ չփոթություն ու սարսափ առաջացրեց թշնամու չարքերում: Վերջինս հալածական եղավ մինչև երեսուն մղոն տարածության վրա, որն ամբողջությամբ ծածկվեց անհամար դիակներով:*

*43. Պատմում են, որ պարծենկոտ ու գոռոզ Խրիսոխիրին, երբ նա իր մի քանի մերձավորների հետ փախուստի էր դիմում, սկսեց հետապնդել Պուլլադ անձականով մի հռոմայեցի: Սա Տիվրիկում գերի էր, բայց իր սրամտությամբ ու շնորհքով դարձել էր Խրիսոխիրի մտերիմն ու մերձավորը: Ահա բարբարոսը տեսնելով, թե ինչպիսի եռանդով ու ոգևորությամբ է հալածում իրեն Պուլլադը, չուռ եկավ ու ասաց. «Ով թշվառական Պուլլադ, ես քեզ ի՞նչ վատություն եմ արել, որ այսպես մոլեգին հալածում ես ինձ, կամենալով սպանել»: Նա կտրուկ պատասխան տվեց, թե՝ «պատրոն, համոզված եմ, որ Աստված կօգնի ինձ այսօր փոխհատուցել լինելու քո բարերարությանը, դրա համար եմ քեզ հալածում»: Խրիսոխիրը հուսաբեկ ու սարսափահար սլանում էր առաջ, իսկ Պուլլադը համարձակ, երիտասարդական ավյունով և կորովով հալածում էր նրան: Հալածականը հանդիպում է մի խոր փոսի, որի վրայով ձին վախենում էր ցատկել և ծառս եղավ: Երբ Խրիսոխիրը մտահոգված էր այդ դժվարությունը հաղթահարելու գործով, Պուլլադը նիզակի հարված է հասցնում նրա կողին: Նա ցավից գալարվելով՝ ձիուց ցած գլորվեց: Նրա մերձավորներից Դիակոնիցես*

*անունով մեկը, իջնելով իր ձիուց, դիմեց տապալված տիրոջն օգնության. նրա գլուխն իր ծնկներին դնելով, սկսեց ողբալ պատահարը: Ահա այդ միջոցին Պուլլադին միացան և ուրիշները, որոնք իրենց ձիերից իջնելով, մահամերձ, դեռևս հոգեվարքի մեջ գտնվող Խրիսոխիրի գլուխը կտրեցին, իսկ Դիակոնիցեսին մնացածների հետ գերիների թվին դասեցին: Ահա այդ պիղծ մարդիկ անակնկալորեն պարտության մատնվեցին, և քրիստոնեությունն հաղթանակեց: Ավետիսների հետ մեկտեղ անհապաղ կայսեր է ուղարկվում Խրիսոխիրի գլուխը: Այն ժամանակ կայսրն, այսպես կոչված Պետրիոնում (Թաղամաս) էր գտնվում, որտեղ էր և իր դուստրերի վանքը: Երբ Խրիսոխիրի գլուխը բերեցին, կայսրը վերհիշեց իր աղոթքները, իր հոգու աչքերը հառեց Աստծուն, ով ի կատար է ածում խնդրանքը բոլոր նրանց, ովքեր արտասվալից նրան են դիմում, որից հետո հրամայեց նետ ու աղեղ տան. ձգելով լարը, նա երեք նետ գամեց նրա թշվառական գանգին և հարվածներից ոչ մեկը չվրիպեց: Ամբարիշտի մահը նա արժանի քավությունը համարեց այն բյուրավոր զոհերի համար, որոնց մահվան պատճառ դարձավ նա իր իշխանության բազում տարիների ընթացքում: Աստծո օգնությամբ ահա այսպիսի վախճան ունեցան Խրիսոխիրը և Տիվրիկի ծաղկած հզորությունը, Աստված, որ ընդառաջ գնաց բարեպաշտ կայսր Վասիլի բազում թախանձանքներին:*

*1. Նկատի ունի բուլղարների ցար Բորիսի քրիստոնյա մկրտվելը, քրիստոնեությունը բուլղարների մեջ տարածվելը և այդ առթիվ Բյուզանդիայի և Բուլղարիայի միջև հաշտության կնքումը:*

*2. Հայազգի կայսրուհի Թեոդորան (842-856), Թեոփիլոս կայսեր կինը, Միքայել III կայսեր մայրը, կեսար Վարդասի և սպարապետ Պետրոնասի քույրը:*

*3. Սրանց լրիվ անունները հանդիպում են Կեդրենոսի ժամանակագրության մեջ՝ Լևոն Արգիրոս և Անդրոնիկոս Դուկաս:*

*4. Ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտան: Կոչվում էր և Ամբրոն և այդ անունով է հանդես գալիս բյուզանդական էպոսում:*

*5. Ալին մահմեդականացած հայ էր: Լրիվ անունն է Ալի իբն Յահյա ալ-Արմանի: Սա էր Աշոտ I Բագրատունուն «իշխանաց իշխանի» տիտղոսը բերողը («Ապա ոստիկան ոմն ի Հայս առաքեալ, որ Ալի Արմանի անուանիւր՝ ըստ հրամանի ամիրապետին իշխան իշխանացս Հայոց զնա կացուցանէր», տե՛ս* ***Յովհաննու Կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց****, Թիֆլիս, 1912, էջ 133):*

*6. Միքայել III-ի մանկահասակության պատճառով փաստական իշխանությունը գտնվում էր կայսեր մորեղբոր՝ Վարդասի ձեռքում:*

*7. Դրանից առաջ Վարդասը Միքայելի համագործակցությամբ Թեոդորային բանտարկել էր:*

*8. Զինվորական աստիճան, զորավարից հետո ամենաբարձր աստիճանավորը բանակաթեմում: Նրա հրամանատարության ներքո լինում էին 500 նետաձիգ, 300 վահանակիր և 100 նիզակակիր: Որպես կանոն կրում էր պրոտոսպաթարի կոչում:*

*9. Վասիլ I Մակեդոնացին:*

*10. Խոսքը Արգաուսի մասին է: Ժամանակակից Արգովանն է:*

*11. Նկատի ունի Տիվրիկ քաղաքը:*

*12. Մեկ տաքսիսի (մոտ 130 զինվորի) հրամանատարը:*

*13. Իմա՝ հարյուրապետների:*

*14. Բյուզանդական բանակը բաղկացած էր երկու մասից՝ թեմաներից և տագմաներից: Առաջինները ներկայացնում էին նահանգների, բանակաթեմերի զորքերը, իսկ տագմաները այն զորքերն էին, որոնք կենտրոնացած էին մայրաքաղաքում և նրան մոտիկ նահանգներում՝ Թրակիայում, Մակեդոնիայում, Բոսֆորի ասիական կողմում:*

## 10. «ՎԱՍԻԼ ԴԻԳԵՆԻՍ ԱԿՐԻՏԱՍ»

***Բյուզանդական էպոս, որ ձևավորվել է IX դարի վերջին և X դարի առաջին կեսին պավլիկյան աղանդավորների չառավիղների և բյուզանդական արևելյան բանակաթեմերի արիստոկրատիայի շրջանում: Պահպանվել է էպիկական պոեմի ձևով, որի հեղինակն անհայտ է: Պոեմում փառաբանվում են Վասիլ Դիգենիս Ակրիտասի («Երկածին սահմանապահի»), ինչպես և նրա ծնողների սխրանքները: Էպոսի «պավլիկյանական» չերտից պահպանվել են բազմաթիվ երգեր, որոնք ներբողում են պավլիկյան սպարապետներ Խրիսոխիրին (պոեմում՝ Խրիսոխերպոս, Դիգենիսի հոր կողմից պապը) և Կարբեասին (պոեմում՝ Կարոես, Դիգենիսի հոր քեռին): Դիգենիսի հոր պապը կոչված է Ամբրոն, որ պավլիկյանների դաշնակից Մելիտենեի ամիրա պատմական Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտան է: Պոեմում իրենց արձագանքն ու արտացոլումն են գտել բազմաթիվ հայ գործիչներ, Արևմտյան Հայաստանի շրջաններ, հայկական ժողովրդական երգեր (Անգեղյա Տորքի մասին) և այլն:***

***Էպոսի հայերեն ամբողջական թարգմանությունը, որ լույս է տեսել «Վասիլ Դիգենիս Ակրիտաս. Թարգմանություն, ուսումնասիրություն, ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի» (Երևան, 1978) խորագրի ներքո կատարված է բնագրի հետևյալ հրատարակությունից.***

*Βασίλειος Διγενὴς ᾿Ακρίτας. Τὰ ἔμμετρα κείμενα ᾿Αθηνῶν (πρώην ῎Ανδρου, μετὰ συμπληρώσεων καὶ παραλαγῶν ἐκ τ.ς διαZ σκευ.ς Τραπεζοῦντος), Κρυπτοφέρρης καὶ ᾿Εσκοριάλ. Νέα πλήρης*

*ἔκδοσις μετ᾽εἰσαγωγ.ς, ὑποσημειώσεων καὶ κριτικοῦ ὑπομνήματος ὑπὸ Πέτρου Π. Καλονάρου, τόμος πρῶτος, ᾽Αθ.ναι, 1941.*

### ԴԻԳԵՆԻՍԻ ԱՍՔ ԵՐԿՐՈՐԴ

### *ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՄԻՐԱՆ ՊԱՏՄՈՒՄ Է ԻՐ ԱՆԵՐՁԱԳՆԵՐԻՆ[1], ԹԵ ԻՆՔԸ ՈՐ ՏՈՀՄԻՑ Է ՍԵՐՈՒՄ*

*Պատասխան տվեց նրանց ամիրան.*

*«Կտրիճ տղաներ, որդին եմ, ասաց,*
*ես Խրիսոխերպի[2] ու Սպաթիայի[3],*
*մանուկ էի դեռ, երբ հայրս մեռավ,*
*մայրս ինձ հանձնեց իմ քեռիներին՝*
*արաբ, որ անափ սիրով սնեցին:*
*Պապս Ամբրոնն[4] էր, քեռիս՝ Կարոես[5]:*
*Տեսնելով ինչպես միշտ հաղթող էի,*
*տերը դարձրին ողջ Ասորիքի:*
*Ինձ երեք հազար կտրիճ տվեցին,*
*Ասորիք, Կուֆեր[6] ինձ ենթարկեցի,*
*Հերակլի երկիր[7], Ամոր[8] ու Իփեր[9]:*
*Ես չեմ վախեցել զորքից, գազանից,*
*միայն ձեր փնտրած քույրն է ինձ հաղթել...»:*

### ԴԻԳԵՆԻՍԻ ԱՍՔ ԵՐՐՈՐԴ

*Մայրն ամիրայի (տատը Վասիլի)[10],*
*Երբ որ իմացավ արածն իր որդու[11],*
*նա Ասորիքից նամակ ուղարկեց,*
*ողբով ու ցավով, պարսավանքով լի:*
*Նրա նամակում այսպես էր գրված.*
*«Որդյակ պաշտելի, քո մոր սփոփանք,*
*դու ինձ լքեցիր, կրոնքդ ուրացար,*
*հայրենիք, նաև ազգականներիդ:*
*Պանդուխտ դու դարձար, լույս մարեցիր*
*ինձ Ասորիքում խայտառակեցիր,*
*բոլորի համար գարշելի դարձանք՝*
*իբրև ուրացող և օրինազանց,*

*մեծ Մարգարեի[12] օրենքը դրժած:*
*Ի՞նչ եղավ, որդյակ, որ դու մոռացար,*
*մտքից հանեցիր սխրանքը քո հոր[13]:*
*Նա բյուր հռոմներ կոտորեց, գերեց,*
*զնդաններ լցրեց քաջ տոպարխներով[14],*
*Ռոմանիայի թեմեր[15] ավարեց,*
*չեղավ ուրացող, չչեղվեց քեզ պես:*
*Նրան երբ պատեց զորքը հռոմոց,*
*զորավարները մեծ երդումներով*
*կայսրից խոստացան դարձնեն պատրիկ,*
*անգամ զորավար, թե թուրը գցի:*
*Նա Մարգարեի պատգամը պահեց,*
*փառքը քամահրեց, գանձերը բոլոր,*
*թեև խողխողվեց, թուրը չգցեց:*
*Իսկ դու ուրացար առանց պատճառի*
*օրենք ու հավատք, ազգական ու մայր:*
*Իսկ քո տարսոնցի քեռիդ Մուսուրը[16]*
*արշավեց մինչև Զմյուռնիան ծովափնյա,*
*Անկյուրան առավ, քաղաքն Ակինա[17],*
*Աֆրիկ[18], Տերենտե[19], Հեպտակոմիա[20],*
*ավեր սփռելով Ասորիք դարձավ»:*
*..........................................................*

**ԴԻԳԵՆԻՍԻ ԱՍՔ ՉՈՐՐՈՐԴ**

*Պարծանքը նրանց[21] անհիմն էր, անփաստ,*
*իսկ ամիրայի՝ ստույգ ու վկայված,*
*ամեն ինչ մենակ գործեց, ընդունեք:*
*Պապն էր Ամբրոն, Կարոես՝ քեռին,*
*սիրով սնեցին արաբներն իրեն,*
*երեք հազար քաջ կտրիճ տվեցին,*
*ողջ Ասորիքին, Կուֆերին տիրեց,*
*ընտիր զորքերով նա Մագուլների[22],*
*հողերը եկավ Ռոմանիայի:*
*Թալանեց բազում և մեծ շրջաններ,*
*այն է Հերակլի և այլ գավառներ,*
*նույնպես Խարսիանեն[23], Կապադովկիան.*
*որտեղ նա գերեց մի հռոմ կույսի,*
*տոհմին պատկանող այն Դուկասների:*
*..................................................................*

*Նրանց[24] առաջին զորավարն էր*
*Խոսրովը[25], որ ողջ Արևելքն առած,*
*Բյուզանդիոն եկավ, ուզեց պաշարել:*

### ԴԻԳԵՆԵՍԻ ԱՍՔ ԻՆՆԵՐՈՐԴ

*Ապա մեծ սուլթան Ամբրոնը եկավ,*
*նախնին Վասիլի[26], այն տարսոնացին[27],*
*(Հենց սա էր Հայրը Վասիլի տատի):*
*Սպաթիա էին կոչում, անվանում*
*Հորը Վասիլի աշխարհ բերողին,*
*մեծ ամիրային, փառավոր, արի:*
*Մուսուր էր նրա անունը նախապես[28],*
*բայց մկրտվելով կոչվեց Հովհաննես:*
*Ահա մեր նշած տարսոնցին արի*
*Ռոմանիայում ավեր էր սփռում:*

*.........................................................*

*Մուսուրը հետո, որդին Տարսոնցու,*
*ապա ամիրան Կարոեսը մեծ...:*

*1. Այսինքն՝ ապագա աներձագներին:*

*2. **Խրիսոխերպ** – պատմական Խրիսոխիրն է, պավլիկյանների սպարապետը:*

*3. Սպաթե էր կոչվում պավլիկյանների մի ամրոցը, որ գտնվում էր Տիվրիկի մոտ:*

*4. **Ամբրոն** – Պատմական Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտան է, Մելիտենեի ամիրան:*

*5. **Կարոես** – պատմական Կարբեասն է, պավլիկյանների սպարապետը:*

*6. **Կուփեր** – ենթադրաբար Կուփա քաղաքը՝ Եփրատի ձախ ափին, Հարավային Միջագետքում:*

*7. Հավանաբար՝ Անգեղ տունը:*

*8. **Ամոր** (Ամորիոն) – հայտնի քաղաք Փռյուգիայում, 838 թ. գրավվեց արաբ խալիֆա Մութասիմի կողմից:*

*9. **Իփեր** – էպոսի այլ տարբերակներում՝ Իկոնիոն: Ըստ Ջ. Մավրոգորդատոյի՝ Ակրոինոնը, Ամորիոնից հյուսիս գտնվող քաղաք:*

*10. **Տատը Ակրիտի** – ապագա տատը:*

*11. Եդեսիայի (Ուռհա) ամիրա Մուսուրի, որ քրիստոնյա դառնալով կոչվեց Հովհաննես:*

*12. Իմա՝ Մոհամմեդի:*

*13. Իմա՝ Խրիսոխերպի, պատմական Խրիսոխիրի:*

*14. **Տոպարխ** – բառացի նշանակում է երկրամասի, երկրի իշխան, կառավարիչ:*

*15. Այսինքն՝ բանակաթեմեր:*

*16. Վերևում Մուսուրը կոչված է Կարոես:*

*17.* ***Ակինա*** *– Հայկական Ակնը, այժմ Էգին:*

*18. Ոչ թե Աֆրիկան, այլ պավլիկյանների մայրաքաղաք Տեֆրիկեն (Տիվրիկը):*

*19.* ***Տերենտե*** *– այժմ՝ Դերենդե: Քաղաք Երկրորդ Հայքում:*

*20.* ***Հեպտակոմիա*** *– Թարգմանաբար նշանակում է «Յոթ գյուղ»: Ենթադրում են, որ Պոնտոսում էր գտնվում:*

*21.* ***Պարծանքը նրանց*** *– բյուզանդական էպոսում հանդես եկող ապելատների պարագլուխների:*

*22.* ***Մագուլներ*** *– մեր կարծիքով Անգեղտան զորքերը:*

*23.* ***Խարսիանե*** *– Չորրորդ Հայքի Խորձյան գավառը:*

*24.* ***Իմա՝*** *մուսուլմանների:*

*25.* ***Խոսրովը*** *– պարսից արքան:*

*26.* ***Նախնին Վասիլի*** *– Վասիլ Դիգենիս Ակրիտասի, բյուզանդական էպոսի գլխավոր հերոսի:*

*27.* ***Տարսոնացին*** *– Ուռհայի ամիրա Մուսուրի պապը:*

*28. Մուսուր է կոչված մի այլ տեղում նաև Կարոեսը:*

## 11. ԱՆՆԱ ԿՈՄՆԵՆԱ

***Բյուզանդական կայսր Ալեքսիոս I Կոմնենոսի (1081-1118) ավագ դուստրը: Ծնվել է 1083 թ., մահացել 1148-ից հետո: Գրել է «Ալեքսիական» խորագիրը կրող փաստերով հարուստ մի պատմություն, իր հոր կյանքի ու գործունեության ներբողյանը: «Ալեքսիական»-ը բաղկացած է 15 գրքից, սկսվում է 1069 թ. դեպքերով և ավարտվում է 1118 թ., Ալեքսիոս I-ի մահով: Դեպքերի ու դեմքերի կատարյալ իմացությունը, փայլուն լեզուն հնարավորություն են տվել հեղինակի աշխատությունը դասելու բյուզանդական լավագույն աղբյուրների թվին:***

***«Ալեքսիական»-ում խոսք է լինում Թրակիայի պավլիկյանների մասին: Թարգմանությունը կատարված է բնագրի հետևյալ հրատարակությունից. Anne Comnène,*** *Alexiade (règne de l'empereur Alexis I Comnène, 1081-1118), texte établi et traduit par B. Leib, t. I-III, Paris, 1967.*

### *Գիրք Զ, գլուխ 2*

*1. Ես այստեղ մի փոքր կընդհատեմ պատմությունը, ասելու համար, թե ինչպես կայսրը[1] հաղթահարեց պավլիկյաններին: Նա չէր ուզում արքունիք վերադառնալ այդ ուրացողներին պարտության չմատնած: Կարծես մի հաղթանակից մի ուրիշին դիմելով, այնպես արեց, որ մանիքեցիների բազմության դեմ տարած (հաղթանակը) եզրափակի իր մեծագործությունների շրջանակը: Արևմտյան թշնամիների դեմ կանգնեցրած պայծառ հաղթական հուշարձանի վրա*

*պավլիկյաններից այդ սերողները կարծես մի բիծ լինեին: Նա չէր ուզում պատերազմով ու կռվով անել դա, որպեսզի ընդհարման ժամանակ երկու կողմից էլ բազում զոհեր չլինեն: Նա վաղուց գիտեր, թե (պավլիկյանները) ինչ քաջ տղամարդիկ են, թշնամիների դեմ անչափ հանդուգն: Ահա այդ պատճառով նա ջանք էր թափում պարագլուխներին պատժել, իսկ մնացածներին՝ զինվորագրել: 2. Նա դիմեց հետևյալ քայլին: Քաջ գիտենալով այդ տղամարդկանց անվախ, պատերազմներում և մարտերում աներեր լինելը, նա վախենում էր, որ հուսահատության դուռը հասնելով, կմտածեն ավելի վատ բան անել: Առայժմ նրանք իրենց հայրենիքում ապրում էին խաղաղ, չէին դիմում ավարառությունների և ասպատակությունների: Ահա նա նրանց նամակ գրեց և, մեծ խոստումներ տալով, Բյուզանդիոն հրավիրեց: (Պավլիկյանները) կելտերի[2] դեմ (Ալեքսիոսի) տարած հաղթանակին տեղյակ, երկմտանքի մեջ ընկան, արդյո՞ք նամակների բովանդակած խոստումները հավաստի են: Այդուհանդերձ, ակամա չարժվեցին դեպի (կայսրը): 3. Վերջինս, հասնելով Մոսինուպոլիս[3], կանգ առավ, ձևացնելով, թե ինչ-ինչ պատճառներով դադար է առել, բայց իրականում նա նրանց գալստյանն էր սպասում: Երբ նրանք հասան, (կայսրը) ձևացրեց, թե ուզում է ստուգել նրանց և յուրաքանչյուրի անունը գրել: Նա չատ զգույշ և աչալուրջ հրամայեց մանիքեցիների պարագլուխներին տասնյակների բաժանել, խոստանալով չարքայիններին ստուգել հաջորդ տարի: Ահա այդպես, նա գրանցվածներին հրավիրեց դարպասից ներս մտնել: (Դարպասի) հետևում կանգնած էին մտնողներին կալանավորելու պատրաստ մարդիկ, որոնք նրանց ձիերն առնելով ու զինաթափ անելով, նետում էին որոշված զնդանները: (Պավլիկյանների պարագլուխները) կատարվածին բացարձակապես անտեղյակ, մեկը մյուսի ետևից գալիս ու մուտք էին գործում, իրենց գլխի գալիքին անիրազեկ: 4. (Ալեքսիոսն) ահա նրանց այդպես ձերբակալեց, ունեցվածքը գրավելով բաժանեց մարտերում ու փորձություններում իր հետ տառապած քաջարի զինվորներին: Ունեցվածքը գրավելու գործը գլխավորող անձնավորությունը (աղանդավորների պարագլուխների) կանանց քշեց տներից ու արգելափակեց միջնաբերդում: Փոքր անց կայսրը ձերբակալված մանիքեցիներին ներման արժանացրեց. ովքեր հանձն առան սուրբ մկրտության արժանանալ, իրենց փափագին հասան: (Կայսրը) բոլոր միջոցներին դիմեց իմանալու համար, թե ովքեր են այդ խելացնորության պարագլուխները, նրանց կղզիներն աքսորեց ու բանտարկեց, իսկ մնացածներին թույլ տվեց գնան ուր ցանկանան: Նրանք իրենց հայրենիքը նախընտրեցին, անհապաղ այնտեղ փութացին, տնօրինելով իրենց կարիքները, ինչպես որ կարողացան:*

*Գիրք ԺԴ, գլուխ 8*

*1. ... Իսկ կայսրը դադար առավ Ֆիլիպուպոլսում։ 3. ... (Քաղաքը) անմխիթար վիճակում էր, ի միջի այլոց, նաև այն պատճառով, որ այնտեղ բնակվում էին բազում ամբարիշտներ։ Հիշյալ քաղաքը Հայերի, այսպես կոչված բոգոմիլների (նրանց մասին, ինչպես և նրանց աղանդի մասին հետագայում, իր տեղում պատմելու ենք), ինչպես և ամենաանաստված պավլիկյանների՝ մանիքեցիների տաչեղների ձեռքում էր։ Սրանք, ինչպես անունն է վկայում, Պողոսից և Հովհաննեսից են սերում, Մանիի ամբարշտությունն առնելով, այն անխառն ձևով փոխանցեցին իրենց հետևորդներին։ 4. Ես ցանկանում էի կանգ առնել մանիքեցիների գաղափարների վրա և հանգամանորեն շարադրել, միաժամանակ ջանալ քննադատել այդ ամենաանաստված գաղափարները, սակայն գիտենալով, որ մանիքեցիների աղանդը բոլորին ծիծաղելի է, ապա և շտապելով շարունակել սույն պատմությունը, բաց եմ թողնում նրանց գաղափարների քննադատությունը...։*

*5. Մանիի և Կալլինիկեի որդիներ Պողոսի և Հովհաննեսի հետևորդներին, էլ ավելի վայրենի գաղափարներ դավանող դաժան և մարտերում աներկյուղ մարդկանց, այն հրաշալի կայսր Հովհաննես Չմշկիկը[4] պատերազմում պարտության մատնելով, Ասիայից՝ Խալյուբներից ու Արմենիակների վայրերից գաղթեցրեց և ստիպեց Ֆիլիպուպոլսի շուրջը բնակվեն։ Դրանով նա երկու նպատակի հասավ, նախ նրանց հեռացրեց իրենց բռնատիրած անառիկագույն քաղաքներից ու բերդերից, ապա և, հանձինս նրանց, ապահովագույն պահապաններ կանգնեցրեց բարբարոս սկյութների ներխուժումների դեմ, որոնցից շատ հաճախ տուժում էին Թրակիայի շրջանները։ 7. Հովհաննես Չմշկիկը մանիքեցի հակառակորդներին դաշնակիցների վերածելով, ի դեմս նրանց՝ հզոր ռազմական ուժ հակադրեց այդ քոչվոր սկյութներին։ Եվ այսուհետև քաղաքները բազում հարձակումներից շունչ քաշեցին։ Մանիքեցիները, ի բնե ազատասեր լինելով և անհնազանդ, իրենց ցանկացածն էին անում, ինչ իրենց բնատուր էր։ Համայն Ֆիլիպուպոլսի բնակչությունը, փոքր բացառությամբ, մանիքեցիներ էին, որոնք բռնանում էին տեղացի քրիստոնյաների վրա, հափշտակում նրանց ունեցվածքը, քիչ կամ ամենևին ուշադրություն չէին դարձնում կայսեր կարգադրություններին։ Նրանց թիվը գնալով աճում էր և Ֆիլիպուպոլսի շուրջը բնակվողները բոլորն էլ հերետիկոսներ էին։ Սրանց մեջ հոսում էր և մի այլ գետ, հայոց դառը գետը[5], ինչպես և Հակոբի ամենապղտոր ակունքներից հոսողը[6]։ Մի խոսքով, ամեն տեսակի չարիքի մի ձոր էր։ Թեև նրանք իրենց դոգմաներով հակասում*

*են միմյանց, բայց խռովությունների դեպքում բոլորը համաձայնվում էին մանիքեցիներին: 8. Բայց իմ հայրը, կայսրը, սրանց էլ հակադրեց իր ռազմական մեծ փորձը, մի մասին առանց մարտի ձերբակալեց, մյուսին՝ պարտության մատնելով գերեվարեց...:*

## *Գիրք ԺԴ, գլուխ 9*

*Վերադառնալով Ֆիլիպուպոլիս և մի փոքր հանգստանալով, կայսրը վերստին դիմեց պայքարի: Նա ամեն օր իր մոտ էր հրավիրում մանիքեցիների աղանդի պարագլուխներ Կուլեոնին, Կուսինոսին և Ֆոլոսին և նրանց դեմ բանական պատերազմ էր մղում: Սրանք մնացած մանիքեցիներից ոչնչով չէին տարբերվում, բայց իրենց չարափառությունը պաշտպանելու, աղամանդյա խոսքերի դեմ հանդես գալու մեջ ուժեղ էին, աստվածային աստւյթը ծվատելու և այն վայրիվերո մեկնաբանելու մեջ անչափ հնարամիտ: Տեսնելու բան էր կրկնակի մաքառումը՝ կայսեր համառ պայքարը նրանց փրկության համար և նրանց ճիգը կադմյան հաղթանակ տանելու[7]: Տեսնելու բան էր այդ երեքին կանգնած, կարծես վարազի նման սուր ատամներով, կայսեր խոսքերը բզկտելու պատրաստ: Երբ Կուսինոսը որևէ հարցում չէր կարողանում առարկել, մեջ էր ընկնում Կուլեոնը, իսկ երբ Կուլեոնն էր անել վիճակի մեջ ընկնում, Ֆոլոսն էր օգնության հասնում: Մեկը մյուսի ետևից, կարծես հսկայական ալիքներ մեծ ալիքների վրա, նրանք հանդես էին գալիս կայսեր դրույթների և փաստարկների դեմ, բայց կայսրը նրանց հակաճառությունները, որ կարծես սարդոստայն լինեին, ցրիվ էր տալիս, իսկույն փակում պիղծերի բերանները: Թեպետև խոսքով կայսրը չկարողացավ որսալ այդ պարագլուխներին, այդուհանդերձ, կատարյալ անհաջողության էլ չմատնվեց: Նա ամեն օր դեպի Աստված դարձի էր բերում մի անգամ հարյուր, մի ուրիշ անգամ հարյուրից ավելի (աղանդավորների), այնպես որ նախկինում որսացված և այժմ (կայսեր) խոսքով որսացվածների թիվը հասավ հազարների ու բյուրերի: 4. Բայց ի՞նչ կարիք կա խոսել մի բանի շուրջ և ժամավաճառ լինել, երբ այդ մասին ողջ աշխարհը գիտե, երբ այդ մասին վկայում են Արևելքն ու Արևմուտքը: Նա ամեն տեսակի աղանդներով վարակված բոլոր քաղաքներն ու գյուղերը տարբեր ճանապարհներով դարձի բերեց դեպի մեր ուղղափառ հավատքը, նրանց պարագլուխներին մեծ նվերների արժանացրեց և ընտրյալ զինվորների շարքը դասեց, իսկ բոլոր ռամիկներին, ովքեր որ եզներով (լծված) արորներով հող էին հերկում, երեխաներով ու կանանցով հավաքելով, Ֆիլիպուպոլսի մոտ, Եվրոս գետից այն կողմ նրանց համար քաղաք կառուցեց և վերաբնակեցրեց, քաղաքին*

*տալով Ալեքսիուպոլիս կամ Նեոկաստրոն անունը: Այս վերջին անունն էլ գերիշխեց: (Ֆիլիպուպոլսի աղանդավորներին) և նորաբնակներին նա մշակելի հողեր նվիրեց, խաղողի այգիներ, տներ և անշարժ գույք, նա տվածն այդպես խախուտ չթողեց, չթողեց նմանվի Ադոնիսի պարտեզներին՝ այսօր ծաղկող, իսկ վաղը՝ քանդվող, նա նվիրածը հաստատեց խրիսովուլ փաստաթղթերով[8]:*

*Իսկ կայսրը բոլոր մանիքեցիներից ամենաաստվածանարգներին, ուղիղ դեպի խելագարություն ընթացողներին, իրենց ամեն անհրաժեշտ բանով առատորեն ապահովելով, Էլեֆանտինե կոչվող բանտում արգելափակեց ու թողեց իրենց վատթարությամբ մեռնեն:*

## *Գիրք ԺԵ, գլուխ 8*

*1. Դրանից հետո, իր թագավորության ... տարում[9], հերետիկոսների մի հսկայական ամպ բարձրացավ, աղանդը նոր էր, եկեղեցուն մինչ այդ անծանոթ: Անցյալում հայտնի չարագույն ու վատթարագույն երկու վարդապետությունների մի խառնուրդը՝ մանիքեցիների այսպես ասած ամբարշտությունը, որին և պավլիկյաններ անվանեցինք, և մեսսալյանների[10] խորշանքը: Դա բոգոմիլների վարդապետությունն է՝ մեսսալյանների և մանիքեցիների միացությունը...:*

*1. Ալեքսիոս I Կոմնենոսը (1081–1118):*

*2. Իմա՝ նորմանդացիների:*

*3. Քաղաք Արևմտյան Թրակիայում, ժամանակակից Կոմոտինիի մոտ:*

*4. Հովհաննես I Չմշկիկ հայազգի կայսրը (969–975): Նրա գաղթեցրած աղանդավորները մեր կարծիքով ոչ թե պավլիկյաններ էին, այլ թոնդրակեցիներ, քանզի Արևելքում պավլիկյանները ոչնչացվել էին դեռևս Վասիլ I կայսեր կողմից:*

*5. Նկատի ունի միաբնակ հայերին:*

*6. Խոսքը հակոբիկյանների մասին է:*

*7. Առած է, որ նշանակում է վնասաբեր հաղթանակ տանել: Սկիզբը է առել Թեբեի թագավոր Էդիպի և նրա մոր Իոկաստեի պիղծ հարաբերությունից ծնված Էտեոկլեսի՝ իր եղբոր Պոլինիկեսի դեմ տարած «հաղթանակի» առթիվ, երբ երկուսն էլ սպանվեցին մենամարտում, իսկ Իոկաստեն էլ նրանց դիակների վրա ինքնասպանություն գործեց: Թեման Սոփոկլեսի և Եվրիպիդեսի մի շարք ողբերգությունների նյութն է դարձել:*

*8. Ոսկե կնիք (խրիսովուլ) կրող փաստաթուղթ:*

*9. Այստեղ բնագիրը եղծված է. հայտնի չէ, Ալեքսիոս I Կոմնենոսի թագավորության ո՞ր տարվա մասին է խոսքը:*

*10. Հայկական աղբյուրներում մեսսալյանները կոչվում են մծղնյաներ, նրանց աղանդը՝ մծղնեություն:*



**ԲԱԺԻՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ**

# ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ

## (IV–IX դարեր)

## ԿՈՐՅՈՒՆԸ ՀԱՅՈՑ ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏԻ ՄԱՍԻՆ

### *ՎԱՐՔ ՄԱՇՏՈՑԻ*

*[Գ]*

*Մաշթոց էր անունն այն մարդու, որ հիշեցինք մեր խոսքի սկզբում, որի համար և մենք հոգ ենք տարել պատմելու: Նա Տարոն գավառից էր, Հացեկաց գյուղից, Վարդան անունով երանելի մարդու որդին: Մանկական հասակում նա կրթվել էր հելլենական դպրությամբ, [ապա] եկել, հասել էր Մեծ Հայաստանի Արշակունի թագավորների դուռը[1], կացել էր արքունի դիվանատանը՝ դառնալով արքայի[2] տված հրամանի ծառայողը՝ ոմն Առավանի՝ մեր Հայոց աշխարհի հազարապետության ժամանակ: Նա տեղյակ ու հմուտ էր աշխարհական կարգերին, իր զինվորական արվեստով սիրելի էր դարձել իր զորականներին: Եվ այնտեղ հենց ջանալով ուշադրությամբ հետևում էր աստվածային գրքերի ընթերցանությանը, որով և շուտով լուսավորվեց ու թափանցեց, խորամուխ եղավ աստվածային հրամանների հանգամանքների մեջ, և ամեն պատրաստությամբ զարդարելով իրեն՝ իշխանների ծառայությունն էր կատարում:*

*[Դ]*

*Եվ դրանից հետո նա՝ ըստ ավետարանական կանոնի՝ դարձավ մարդասեր Աստծո ծառայությանը. այնուհետև իրենից վանեց իշխանական ցանկությունները և պարծանքի Խաչն առնելով՝ դուրս եկավ Ամենակեցույց Խաչվածի[3] հետևից: Եվ [հավատքի] հրամաններին հավանելով՝ խառնվեց Քրիստոսի խաչակիր գնդին ու շուտով մտավ միայնակեցական կարգի մեջ:*

**[Ե]**



***Մեսրոպ Մաշտոց***
***(հատված Գր. Խանջյանի «Հայկական այբուբենը» գոբելենից)***

*Երանելին այնուհետև իր հավատացյալներին [աշակերտներին] առավ, գնաց իջավ Գողթնի անկարգ ու անխնամ [թողած] տեղերը: Նրա առաջ դուրս եկավ նաև Գողթնի իշխանը, մի աստվածավախ և աստվածասեր մարդ, որի անունը Շաբիթ էր և հյուրամեծար ասպնջական հանդիսանալով՝ բարեպաշտությամբ սպասավորում էր [նրան] Քրիստոսի հավատքի աշակերտների [կարգի] համաձայն: Իսկ երանելին իսկույն իր ավետարանական արվեստը բանեցնելով՝ իշխանի հավատարիմ օգնությամբ սկսեց [քարոզել] գավառում:*

*Եվ երբ նրանց մեջ սերմանեց կյանքի խոսքը, ... նա մտքում դրեց ավելի հոգալ նույնպես համայն աշխարհի[4] ժողովրդին մխիթարելու մասին, [ուստի] և ավելացրեց մշտամռունչ աղոթքն ու բազկատարած պաղատանքն առ Աստված:*

*Եվ այնպես տրտմական հոգսերով պաշարված ու թակարդապատված և մտածմունքների ծփանքի մեջ էր ընկած, թե արդյոք ի՞նչպիսի ելք գտնի այդ բանի համար:*

**[Զ]**

*Եվ շատ օրեր հենց այնտեղ նույն [խնդրով] զբաղվելուց հետո՝ վեր կացավ այնուհետև [եկավ], հասավ Մեծ Հայաստանի Սուրբ կաթուղիկոսի մոտ, որի անունը Սահակ էր, որին և պատրաստ ու հավան*

*գտավ նույն Հոգսի վերաբերմամբ: Եվ նրանք միասին սիրով մեկտեղ գալով՝ առավոտը կանուխ մեծ աղոթքներով Աստծուն [էին դիմում], որպեսզի բոլոր մարդկանց Հասնի քրիստոսաբեր փրկությունը: Եվ այդ անում էին շատ օրեր:*

*Ապա ամենաբարի Աստծուց պարգևվեց նրանց՝ երանելի միաբանյալների աշխարհահոգ խորհուրդը ժողովել և հայ ազգի համար նշանագրեր գտնել:*

*Շատ հարցուփորձով ու որոնումով պարապեցին և շատ նեղություններ կրեցին. հետո և իրենց առաջուց ուզած բանի մասին իմաց տվին Հայոց թագավորին, որի անունը Վռամշապուհ էր կոչվում:*

*Այն ժամանակ արքան պատմեց նրանց մի մարդու, Դանիել անունով մի ազնվական ասորի եպիսկոպոսի մասին, որ հանկարծ գտել է հայերեն լեզվի ալփաբետներ — նշանագրեր: Եվ երբ արքան պատմեց նրանց Դանիելի գտածի մասին, արքային հորդորեցին, որ հոգ տանի այն պիտույքի համար: Նա էլ Վահրիճ անունով մեկին հրովարտակներով ուղարկեց Հաբել անունով մի երեց մարդու մոտ, որ ասորի եպիսկոպոս Դանիելի մերձավորն էր:*

*Իսկ Հաբելն այդ որ լսեց, շտապելով հասավ Դանիելի մոտ և նախ ինքը Դանիելից տեղեկացավ նշանագրերին և հետո նրանից առավ, ուղարկեց արքային Հայոց երկիրը: Նրա թագավորության հինգերորդ տարում[5] հասցրեց նրան [նշանագրերը]: Իսկ արքան՝ Սուրբ Սահակի և Մաշթոցի հետ միասին՝ նշանագրերն ստանալով Հաբելից՝ ուրախացան:*

*Ապա երանելի հոգաբարձուներն [իրենց] հանկարծագյուտ ուզածն առնելով՝ է՛լի խնդրեցին արքայից մատաղահաս մանուկներ, որոնց միջոցով կարողանային նշանագրերը գործադրել: Եվ երբ նրանցից շատերը սովորեցին, ապա [թագավորը] հրամայեց ամեն տեղ նույն [նշանագրերով] կրթել. որով և երանելին հասավ նույն իսկ վարդապետական գեղեցիկ աստիճանին, և մոտ երկու տարի իր ուսուցչությունն արեց ու նույն նշանագրերով տարավ:*

*Իսկ երբ հասկացան, որ այդ նշանագրերը բավական չեն հայերեն լեզվի սիղոբաները — կապերն ամբողջությամբ արտահայտելու համար, մանավանդ, որ նշանագրերն էլ իսկապես ուրիշ դպրություններից թաղված և հարություն առած[6] հանդիպեցին,— ապա դարձյալ երկրորդ անգամ նույն հոգսի մեջ ընկան և մի քանի ժամանակ մի ելք էին փնտրում դրան:*



***Եդեսիա.***
***քաղաքային պարիսպները***

***[Է]***

*Դրա համար երանելի Մաշթոցը՝ արքայի հրամանով և Սուրբ Սահակի համաձայնությամբ՝ մի խումբ մանուկներ առավ հետը և, սուրբ համբույրով միմյանց հրաժեշտ տալուց հետո, ճանապարհ ընկավ, գնաց հայոց արքա Վռամշապուհի հինգերորդ տարում. և գնաց, հասավ Արամի[7] կողմերը, ասորոց երկու քաղաքները, որոնց առաջինը* ***Եդեսիա*** *է կոչվում և երկրորդի անունն է* ***Ամիդ:*** *Ներկայացավ սուրբ եպիսկոպոսներին, որոնց առաջինի անունը Բաբիլաս էր և երկրորդինը՝ Ակակիոս: [Նրանք] կղերականների և քաղաքների իշխանների հետ միասին հանդիպեցին և շատ մեծարանքներ ցույց տալով հասնողներին՝ ընդունեցին հոգ տանելով [նրանց համար] քրիստոնյաների կարգի համաձայն:*

*Իսկ աշակերտասեր ուսուցիչն իր հետ տարածներին երկու [խմբի] բաժանելով՝ ոմանց ասորական դպրության կարգեց [Եդեսիա քաղաքում] և ոմանց հունական դպրության [կարգելով]՝ այնտեղից ուղարկեց Սամուսատական քաղաքը:*

[Ը]

*Եվ նա իր ընկերների հետ սկսեց սովորական աղոթքներն ու տքնությունները և արտասվալից պաղատանքները, խստամբերությունները, աշխարհահեծ հոգսերը, հիշելով մարգարեի ասածը, թե՝ «Երբ որ հեծեծես, այն ժամանակ կապրես»[8]:*

*Եվ այսպես նա շատ նեղություններ քաշեց իր ազգին մի բարի օգնություն գտնելու համար: Ամեն բան շնորհող Աստծուց խնկապես պարգևվեց նրան [այդ] բախտը. նա իր Սուրբ աջով հայրաբար ծնեց նոր և սքանչելի ծնունդներ — հայերեն լեզվի նշանագրեր: Եվ այնտեղ[9] շուտով նշանակեց, անվանեց ու դասավորեց, հորինեց սիղոբաններով — կապերով:*

*Եվ ապա հրաժեշտ տալով սուրբ եպիսկոպոսին[10], իր օգնականների հետ միասին իջավ Սամոսատ քաղաքը, ուր մեծապատիվ կերպով մեծարվեց եպիսկոպոսից և եկեղեցուց:*

*Եվ հենց այնտեղ, նույն քաղաքում գտավ հելլենական դպրության մի գրագիր, Հռոփանոս անունով, որի ձեռով նշանագրերի բոլոր գանազանությունները՝ բարակն ու հաստը, կարճն ու երկայնը, առանձինն ու կրկնավորն ամբողջապես հորինելուց և վերջացնելուց հետո՝ ձեռնարկեց թարգմանություն անելու երկու մարդու, իր աշակերտների հետ, որոնց առաջինի անունը Հովհան էր, Եկեղյաց գավառից, և երկրորդինը՝ Հովսեփ, Պաղանական տնից: Եվ սկսեց թարգմանել [սուրբ] գիրքը՝ նախ Սողոմոնի Առակներից, որ սկզբում հենց հանձնաբարում է ծանոթ լինել իմաստության, ասելով, թե՝ «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»[11], որ և գրվեց այն գրագրի ձեռով. միաժամանակ և սովորեցնում էին մանուկներին՝ գրագիրներ [պատրաստելով] նույն դպրության համար:*

[Թ]

*Ապա դրանից հետո Աստուծու շնորհիվ ճանապարհ ընկավ, օթևաններ անցավ, աջողությամբ ու հոգևլից ուրախությամբ եկավ, հասավ Հայաստան աշխարհը, Այրարատյան գավառի կողմերը, Նոր Քաղաքի[12] սահմանների մոտ, Մեծ Հայաստանի արքա Վռամշապուհի վեցերորդ տարում[13]:*

*... Եվ արդ, երբ հիշելին եկավ, մոտեցավ թագավորական քաղաքին, իմաց տվեցին թագավորին և սուրբ եպիսկոպոսին: Նրանք նախարարազունդ ավագանու բոլոր բազմությունն առնելով՝ քաղաքից դուրս եկան, Ռահ[14] գետի ափին դիմավորեցին երանելիին: Եվ ցան-*

*կալի ողջույնը միմյանց տալուց հետո՝ այնտեղից ցնծության ձայներով և հոգևոր երգերով ու բարձրաձայն օրհնություններով ետ դարձան քաղաքը, և տոնական ուրախությամբ անց կացրին օրերը:*

**[Ժ]**

*Այն ժամանակ Թագավորից շուտով հրաման առավ՝ սկսելու [սովորեցնել] Մարաց խուժադուժ կողմերը, որոնք դժվար մատչելի էին ոչ միայն իրենց դիվական, սատանայակիր, ճիվաղական բարքի, այլև խեցբեկագույն և կոշտ ու կոպիտ լեզվի պատճառով: Ձեռք զարնելով և նրանց շատ տարիների ծնունդներին կոկելու՝ դարձրին [նրանց] պարզախոս, հռետորաբան, կրթված, աստվածատուր իմաստությանը ծանոթ: Եվ այնպես հանգամանորեն խորամուխ եղան նրանք օրենքների ու պատգամների մեջ, որ մինչև անգամ բոլորովին դուրս եկան իրենց ազգակցությունից[15]:*

**[ԺԱ]**

*Եվ այնուհետև աստվածային գործի մշակությունն անելով՝ սկսեցին ավետարանական արվեստը՝ թարգմանել, գրել և սովորեցնել, մանավանդ որ աչքի առաջ ունեին Տիրոջ տված բարձր հրամանները, ավանդված աստվածային բարձր պատգամները, որոնք տրվել էին երանելի Մովսեսին բոլոր եղած բաների մասին — մատյանի մեջ գրել գալիք հավիտենականությանը պահելու համար, այլև ուրիշ մարգարեներին տրված նույնպիսի հրամանները:*

*Եվ այն ժամանակ անպայման սքանչելի դարձավ մեր երանելի ու ցանկալի Հայաստան աշխարհը, ուր երկու հավատակիցների[16] ձեռքով հանկարծ, մի անգամից եկան հասան, հայաբարբառ հայերենախոս դարձան օրենուսույց Մովսեսը՝ մարգարեական դասի հետ, և առաջադեմ Պողոսը[17]՝ բոլոր առաքելական գնդով, Քրիստոսի աշխարհակեցույց Ավետարանի հետ միասին:*

**[ԺԲ]**

*Իսկ երբ իրերի հաստատությունը փորձեցին, ապա ավելի համարձակ և ավելի շատ էին ժողովում նորագյուտ ուսման համար աշակերտներ՝ սովորեցնելու, կրթելու և անգետ մարդկանց քարոզելու համար պատրաստելու: Նրանք իրենք էլ հենց Հայաստան աշխարհի զանազան կողմերից ու գավառներից բազմությամբ վեր կե-*



նում, գալիս հասնում էին աստվածային գիտության բացված աղբյուրը։ Որովհետև Այրարատյան գավառում, թագավորների ու քահանայապետների նստավայրում[18] բխեց հայերի համար Աստծու պատվիրանների շնորհքը։ Այստեղ պետք է հիշել և մարգարեի խոսքը, թե՝ «Աղբյուր կբխի այնտեղ, Դավթի տանը»[19]։

Եվ իսկապես՝ եկեղեցու սյուներն սկսեցին համարձակ ձեռքով Քրիստոսի ավետարանիչների գործը կատարել, Հայաստան աշխարհի զանազան կողմերը, գավառներն ու տեղերը խումբ խումբ ուղարկել ճշմարտության աշակերտներին, գիտության մեջ կատարելության հասցվածներիս [խմբերը]՝ կարող [համարելով] ուրիշներին էլ սովորեցնելու։ Նրանց համար կանոն և օրինակ դրեցին իրենց վաստակը և պատվիրեցին նույն կանոնի մեջ մնալ։

Եվ իրենք աստվածային իմաստությամբ կրթեցին հենց այնտեղ իրենց մոտ եղած արքունիքը բոլոր ազատագունդ բանակի հետ։ Երանելի Սահակն ուսման վարժությամբ զբաղեցնում էր ավելի Մամիկոնյան մարդկանց, որոնց առաջինի անունն էր Վարդան[20], որ և Վարդկան էր կոչվում։ Նույնպես և ամեն մարդու աշխատում էր նա կրթել, հասկացնել ճշմարտության գիտությունը։

*[ԺԴ]*

*Ապա դրանից հետո եկավ սահմանակից Սյունական աշխարհը: Այնտեղ էլ աստվածասեր հնազանդությամբ ընդունեց նրան Սյունիքի իշխանը, որի անունը Վաղինակ էր: [Մաշթոցն] իր առաջադրած գործի համար շատ օգնություն գտավ նրանից, այնպես որ պտտեց, վերահասու եկավ Սյունիքի բոլոր կողմերում: Եվ սովորեցնելու համար մանուկներ ժողովեց, ավելի գազանամիտ, վայրենի, ճիվաղաբարո կողմերինը, և այնքան հոգ տարավ, դաստիարակի պես կրթեց, խրատեց, որ մինչև անգամ հենց այն վայրենիներից կարգեցին Սյունիքի եկեղեցու համար եպիսկոպոս-տեսուչ, որի անունն էր Անանիաս, մի սուրբ ու երևելի [և] եկեղեցու ժառանգավորների համար հայրաբարո մարդ: Ապա Սյունյաց երկիրն էլ լցրեց վանականների դասերով:*

*Այն ժամանակ Աստված տվեց, որ Սյունիքի իշխանության գլուխն անցավ քաջ Սիսական Վասակը[21], խելացի ու հանճարեղ և կանխագետ, աստվածային իմաստության շնորհքով օժտված մի մարդ: Նա շատ նպաստեց Ավետարանի քարոզության գործին: Նա ինչպես որդին հորը՝ հնազանդություն ցույց տալով և Ավետարանին վայել կերպով ծառայելով՝ մինչև վերջը գործադրում էր նրա հրամայածները:*

*[ԺԵ]*

*Դարձյալ՝ մեջտեղում մի ժամանակ անցնելուց հետո՝ Քրիստոսի սիրելին մտածեց հոգ տանել նաև բարբարոսական կողմի համար: Եվ սկսեց տիրոջից իրեն շնորհվածի համեմատ նշանագրեր հորինել վրացերեն լեզվի համար: Գրեց, դասավորեց ու օրինավոր կերպով հարդարեց և իր աշակերտներից մի քանի լավագույններին հետն առավ, վեր կացավ, գնաց, իջավ Վրաց կողմերը: Եվ գնաց, ներկայացավ թագավորին, որի անունը Բակուր էր, և աշխարհի եպիսկոպոսին, [անունը]՝ Մովսես: Եվ թագավորն ու ազնվականները, բոլոր գավառներով միասին, շատ անսացին նրան ըստ աստվածային օրենքի:*

*Եվ նա իր արվեստն առաջարկելով՝ խրատեց, հորդորեց նրանց, և այն ժամանակ ամենքը հանձն առան նրա ուզածը կատարել: Եվ վրացերեն լեզվի մի թարգմանիչ գտավ, որ անվանվում էր Ջաղա, մի գրագետ և ճշմարտահավատ մարդ. այնուհետև վրաց արքան հրամայեց իր իշխանության զանազան կողմերից և խառնաղանջ գավառներից մանուկներ ժողովել և տալ վարդապետի ձեռքը: [Նա էլ] նրանց առավ, ուսման բովի մեջ ձգեց և հոգևոր սիրով ու եռանդով ի բաց*

*քերեց [նրանցից] դևերի ու սնոտի կուռքերի պաշտամունքի չարավա-հոտ աղտն ու ժանգը, այնքան անջատեց հեռացրեց [նրանց] իրենց հայրենի [ավանդություններից] և անհիշող դարձրեց, որ մինչև ան-գամ ասում էին, թե՝ «Մոռացա իմ ժողովուրդն և իմ հոր տունը»[24]:*

*Եվ արդ՝ նրանց, որ այնքան առանձին և բաժանված լեզուներից ժողովվեցին, մեկ աստվածային պատգամներով կապեց, դարձրեց մե՛կ ազգ, մե՛կ Աստծու փառաբանիչներ: Նրանցից գտնվեցին և եպիսկոպոսական կարգին, վիճակին բարձրացած արժանավորներ, որոնց առաջինը, Սամուել անունով մի սուրբ և բարեպաշտ մարդ, եղավ արքունի տան եպիսկոպոս:*

*Իսկ երբ Վրաստանի բոլոր կողմերում կարգի դրեց աստվածա-պաշտության գործը, այնուհետև բաժանվելով նրանցից՝ վերադար-ձավ Հայոց երկիրը և հանդիպելով Հայոց Սահակ կաթողիկոսին՝ պատմեց նրան բոլոր եղելությունների մասին, [և] միասին փառա-վորեցին Աստծուն, մեծանուն Քրիստոսին:*

*[ԺԶ]*

*Ապա դարձյալ դուրս եկավ, շրջեց [իր] կարգած տեղերը և Հայոց աշխարհի աշակերտած գավառները՝ զորացնելու, նորոգելու և հաստատելու համար: Եվ երբ բոլոր տեղերն այնպես լիացրեց Տիրոջ Սուրբ Ավետարանով և ամենքին զգուշացրեց, որ կյանքի ճանապար-հով ընթանան, այնուհետև մտածեց հայոց կես ազգի համար, որ հո-ռոմների թագավորի իշխանության տակ էր[23]:*

*Եվ շտապեց, շատ աշակերտների հետ գնաց հունական կողմերն անցնելու: Եվ իր բարի գործերի մեծ համբավի համար, որ առաջուց այնտեղ նրա մասին հռչակված էր հյուսիսային կողմերից, [նա այն-տեղ] մտնելու ճանապարհի հենց սկզբից մեծ մտերմությամբ ընտա-նեբար պատիվ ստացավ աշխարհի եպիսկոպոսներից և իշխաններից ու գավառացիներից, մանավանդ աշխարհի սպարապետից, որ ան-վանվում էր Անատոլիս: Սա [Մաշթոցի] մտադրած բանը գրով հայտ-նեց կայսրին, որի անունը Թեոդոս էր[25] կոչվում, Արկադ[24] կայսրի որդին, որից և հրաման դուրս եկավ, որ վայել մեծարանքով Ակու-միտ[26] անունով կոչեն սրբին:*

*Իսկ նա իր աշակերտների բազմությունը տարավ Մելիտենե քա-ղաքը, հանձնեց քաղաքի սուրբ եպիսկոպոսին, որ Ակակիոս էր կոչ-վում, և աշակերտների համար գլխավոր թողեց նրան, որ Ղևոնդեոս էին կոչում, մի հավատարիմ և ճշմարտապաշտ մարդու: Եվ [ապա]*

*երանելին Հետն առավ Դերջանի պատվական եպիսկոպոսին, որի անունը Գինթ էր, և այնտեղի աշակերտներից քչերին, և նստելով Հանրային անդրուարը[27] և շատ պատիվ գտնելով՝ Հասան Թագավորանիստ Կոստանդինական քաղաքը: Նրա մասին իսկույն պատմեցին արքունիքում, և նա պատվական աթոռի առաջ մտնելով՝ ներկայացավ աստվածակարգ Թագավորներին և աշխարհամուտ դռան Հայրապետ սուրբ կաթուղիկոսին, որի անունն Ատտիկոս էր, և շնորհք գտավ նրանցից: Հրամայվեց՝ մի որոշ ժամանակ այնտեղ, տիեզերական քաղաքում մեծարել [նրանց] եկեղեցուց, արքունիքից և քաղաքի պատվական իշխաններից կարգված ապրուստով:*

*Եվ ապա զատիկն անելուց Հետո՝ կայսրին բացատրեց նա պիտույքի Հանգամանքները և անընդդիմանալի Հրաման առավ՝ կայսերագիր դրոշմած սակերներով՝[28] Հայոց կես ազգից սովորեցնելու նպատակով մանուկներ ժողովելու Համար, բարբարիանոսների ժանտագործ աղանդի վերաբերյալ ու եկեղեցու Հաստատության, ինչպես և մեծամեծ պարգևներով [նրան] պատվելու մասին: Արդարն այդ մասին Համոզեց պալատականներին, ինքը բան չառնելով՝ Թողեց [նրանց]: Եվ երկրպագեց ծիրանափառ օգոստականներին ու սուրբ կաթուղիկոսին և [Հրաժեշտի] ողջերթ ընդունեց եկեղեցուց ու քաղաքի երևելի իշխաններից, և բոլոր իրայիններով աջողությամբ նստեցին արքունիքից տրված դիպակների ու կառքերի մեջ, և մեծ փառքով ու պատվով բռնեցին Թագավորական ճանապարՀները: Եվ բոլոր քաղաքները դիմավորում էին, [և ամեն] քաղաքում երևելի էին Հանդիսանում:*

*Եվ մեծամեծ պարգևներ ստանալով եկան, Հասան ժամադիր կողմերը: Եվ իսկույն ևեթ Հանդիպեցին [Բյուզանդական] Հայաստանի սպարապետին, կայսրի սակերներով ներկայացան [նրան]: Եվ երբ նա ստացավ կայսերական դրոշմներով սակերները, շտապեց իսկույն Հրամանը կատարելու: Եվ այնուՀետև պատգամավորներ ուղարկեց կայսրի իշխանության մեջ եղած Հայոց կես ազգի գավառները՝ բազմաթիվ մանուկներ ժողովելու և նրանց Թոշակ նշանակելու Հարմարավոր տեղերում, ուր և երանելին իր ուսուցչությունը գործադրում և քաղցրացնում էր ժողովածների Համար:*

*Այն ժամանակ եկավ, Հանդիպեց նրան մի երեց մարդ, ազգով աղվան, անունը՝ Բենիամին: Եվ Մաշթոցը Հարցրեց ու քննեց աղվաներեն լեզվի բարբարոս խոսքերը, ապա վերստին պարգևած իր սովորական կորովամտությամբ նշանագրեր Հորինեց և Քրիստոսի շնորհքի աջողությամբ՝ կշռադատեց, կարգավորեց, Հաստատեց:*

*Դրանից Հետո բաժանվեց եպիսկոպոսներից, աշխարՀի իշխաններից և բոլոր եկեղեցիներից: Նրանց մոտ Հավատացյալների Համար*

*վերակացուներ թողեց իր աշակերտներից երկուսին, որոնց առաջինի անունը Ենովք էր, և երկրորդինը՝ Դանան, կրոնավոր և ավետարանական սպասավորության մեջ առաջադեմ մարդիկ, որոնց հանձնարարելով Աստուծու շնորհքին՝ հենց այնտեղ տեղավորեց: Եվ ինքը շատ աշակերտներով եկավ, անցավ Մեծ Հայաստանի կողմերը և Նոր Քաղաքը հասնելով՝ ներկայացավ Սուրբ եպիսկոպոս Սահակին և Հայոց թագավորին, որի անունն Արտաշես[29] էր, և բոլոր բանակին. և պատմեց նրանց այն կողմերում Աստուծու շնորհքի աջողությամբ [կատարած] գործերը, մի քանի օր մնաց այնտեղ, հորդորեց [նրանց]՝ հոգևոր սեր սփռելու համար:*

### *[ԺԷ]*

*Եվ ապա դրանից հետո մնաք բարով ասաց՝ Աղվանքի կողմերը գնալու համար: Եվ գնաց, իջավ նրանց աշխարհը և հասնելով թագավորական տեղերը՝ տեսավ աղվանների սուրբ եպիսկոպոսին, որի անունը Երեմիա էին ասում, և նրանց թագավորին, որի անունն Արսվաղ էր, որոնք և բոլոր ազատանիներով հանդերձ մեծ հնազանդությամբ ընդունեցին [նրան] Քրիստոսի անվան համար: Ապա երբ հարցրին, նա բացատրեց իր գալու նպատակը: Եվ նրանք երկու զուգակիցները, եպիսկոպոսն ու թագավորը, հանձն առան ընդունել դպրությունը և հրամայեցին իրենց իշխանության գավառներից ու տեղերից դպրության արվեստի համար բազմաթիվ մանուկներ բերել, ժողովել, արժանավոր ու հարմարավոր տեղերում դասատներդպրոցներ [կազմել] և [նրանց] ապրուստի համար թոշակ նշանակել:*

*Իսկ երբ հրամանն իսկապես գործով գլուխ եկավ, ապա այնուհետև երանելի Երեմիա եպիսկոպոսն սկսեց շուտով աստվածային գրքերի թարգմանությունն անել, որով իսկույն մի ակնթարթում Աղվանքի վայրենամիտ և դատարկասուն և անասնաբարո մարդիկը մարգարեագետ և առաքելածանոթ և ավետարանի ժառանգներ դարձան և բոլոր աստվածային ավանդություններին ոչ մի բանով անտեղյակ [չմնացին]:*

*1.* ***Թագավորների դուռը*** *– այստեղ օգտագործվել է որպես հոմանիշ արքունի պալատի:*

*2. Ժամանակի Հայոց արքան էր Խոսրով IV-ը (387-389):*

*3. Այսինքն՝ Հիսուս Քրիստոսի:*

*4. Նկատի ունի բովանդակ Հայաստանը:*

*5. Ուսումնասիրողները վաղուց են նկատել, որ Կորյունի նշանակած թվական տվյալները հիմնականում աղճատված են:*

*6. Այսինքն՝ ուրիշ լեզուների տառեր էին, մոռացված և հետո լույս աշխարհ եկած:*

*7. Այսինքն՝ Ասորիքի կողմերը:*

*8. Տե՛ս **Եսայի**, Լ, 15:*

*9. Նկատի ունի Եդեսիա քաղաքը:*

*10. Խոսքը Եդեսիայի Ռաբուլաս (Բաբիլաս) եպիսկոպոսի մասին է:*

*11. «Ճանաչել իմաստություն ու խրատ, իմանալ հանճարի խոսքերը» (տե՛ս **«Գիրք առակաց»**, 1):*

*12. Այսինքն՝ Վաղարշապատի:*

*13. Ինչպես այլ դեպքերում, այստեղ ևս թվականն աղճատված է:*

*14. Խոսքը Երասխ (Արաքս) գետի մասին է:*

*15. Այսինքն՝ այլևս նման չէին իրենց ազգակիցներին, քանզի արդեն գիտակ էին հայրենի այբուբենին:*

*16. Ակնարկում է Սահակ Պարթևին և Մեսրոպ Մաշտոցին:*

*17. Նկատի ունի Պողոս առաքյալին:*

*18. Այսինքն՝ մայրաքաղաք Վաղարշապատում:*

*19. Հմմտ. **Եսայի**, Լ, 25:*

*20. Խոսքը Ավարայրի հերոս Վարդան Մամիկոնյանի, մասին է:*

*21. Խոսքը նշանավոր Վասակ Սյունեցու՝ Հայոց մարզպանի մասին է:*

*22. Տե՛ս **Սաղմոս**, ԽԴ, 11:*

*23. Նկատի ունի Արևմտյան՝ Բյուզանդական Հայաստանը:*

*24. Խոսքը Բյուզանդիայի Թեոդոսիոս II կայսրի (408-450) մասին է:*

*25. **Արկադիոս** – Արևելյան Հռոմեական կայսրության հիմնադիր կայսր (395-408):*

*26. **Ակումիտ** – բառացիորեն նշանակում է անքուն, հսկող, տքնող, ճգնող:*

*27. **Անդրուար** – սայլակառք:*

*28. **Սակր** – կայսերական սրբազան հրամանագիր:*

*29. Արտաշես IV-ի (423-428) անվան հիշատակումը ցույց է, որ սույն իրադարձությունները տեղի են ունեցել 423 թվականից հետո:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՀԱՅՈՑ ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Գ*

### *ԳԼ. ԽԷ. ԵՐԱՆԵԼԻ ՄԵՍՐՈՊԻ ՄԱՍԻՆ*

*Տեսնելով, որ Հայոց թագավորության վերջը հասել է, Մեսրոպը (երկրի) խռովություններն իր համբերության նյութ դարձրեց: Նա Տարոնի Հացեկից էր, սնվել ու սովորել էր Մեծ Ներսեսի մոտ և նրա վախճանվելուց հետո արքունական դռանը քարտուղար էր նշա-*

*նակվել: Նա սիրեց մենակեցության վարքը, ինչպես ասել էր մեկը, թե ալեկոծված նավն շտապում է դեպի նավահանգիստը, իսկ ժուժկալող մարդն անապատ է փնտրում: Այսպես էլ նա, աշխարհային զբաղմունքներից փախչելով, դեն գցելով մարմնական պատիվը, գնում էր երկնավորի հետևից: Գնում է Գողթն գավառը և ապրում մենակյացի կյանքով: Այստեղ թաքնված հեթանոսական աղանդը, որ Տրդատի օրերից մինչև այդ ժամանակ ծածուկ էր մնում և Արշակունյաց թագավորության տկարանալու ժամանակը երևան եկավ, նա վերացրեց գավառի իշխանի օգնությամբ, որի անունն էր Շաբիթ: ... Սրանից ոչ պակաս բաներ արեց և Սյունիքում նրա Վաղինակ իշխանի օգնությամբ:*

*Երբ երանելի Մեսրոպն ուսուցանում էր, քիչ նեղություն չէր կրում, որովհետև ինքն էր թե՛ կարդացողը և թե՛ թարգմանողը, և եթե մի ուրիշն էր կարդում, երբ ինքն այնտեղ չէր լինում, ժողովրդին անհասկանալի էր մնում՝ թարգմանիչ չլինելու պատճառով: Ուստի նա միտք դրեց մի հնարք գտնել, հայոց լեզվի համար տառեր ստեղծել, և աշխատանքի անձնատուր լինելով՝ զանազան փորձերով չարչարվում էր:*





***Ս. Սահակ Պարթև և Ս. Մեսրոպ Մաշտոց***
***(Հեղինակ՝ իտալացի նկարիչ Ֆրանչեսկո Մաջոտտո. 1750–1805 թթ.)***

## Գլ. ԽԹ. ... ՄԵԾ ՍԱՀԱԿԻ՝ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱԹՈՌԸ ՆՍՏԵԼԸ

... Մեսրոպը եկավ [Սահակ եպիսկոպոսապետի] մոտ հայերեն գրերի հարցի առիթով և տեսավ, որ նա ավելի ևս փափագում է այդ բանին: Շատ ջանքերից հետո, երբ օգուտ չտեսան, դարձյալ աղոթքի ապավինեցին Աստծուց խնդրելով: Միմյանցից բաժանվեցին. Մեսրոպը գնաց իր կացարանը. խստակյաց վարքի անձնատուր լինելով՝ ավելի և ավելի ճիգ էին թափում:

## Գլ. ԾԲ. ԴԱՆԻԵԼՅԱՆ ՆՇԱՆԱԳՐԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ ժամանակ Արկադ [կայսրը] հիվանդացավ: Բյուզանդիոնում Մեծ Հովհաննեսի[1] պատճառով ահագին շարժում և հրդեհներ ծագեցին և Հունաց թագավորությունը[2] շփոթության մեջ ընկավ. զորքերը պատերազմում էին իրար և պարսիկների դեմ: Ուստի Վռամը[3] մեր Վռամշապուհ թագավորին հրամայեց իջնել Միջագետք, որպեսզի խաղաղեցնելով կարգի բերի նրանց և երկու կողմերի գործակալների (վեճերը) վճռի: Երբ նա գնաց այս ամենը կարգավորելու, քիչ նեղություն չկրեց քարտուղարի պատճառով, որովհետև այն օրից, որ Մեսրոպն արքունական դռնից հեռացավ, նա ոչ մի ճարտար դպիր գտնել չէր կարողանում, որովհետև պարսկական գիր էին գործածում: Այս առիթով նրան ներկայացավ Հաբել անունով մի քահանա և խոստացավ հայերեն լեզվի տառեր ստեղծել՝ որ հարմարեցրել էր Դանիել եպիսկոպոսն՝ իր մերձավորը: Թագավորն անփույթ գտնվեց, և Հայաստան գալով տեսավ, որ բոլոր եպիսկոպոսները հավաքվել են Մեծ Սահակի և Մեսրոպի մոտ, հայերեն գրերի գյուտի մասին հոգալու: Երբ թագավորին իմաց տվին այս մասին, նա նրանց պատմեց ինչ որ վանականն ասել էր: Երբ այս լսեցին, նրան սկսեցին թախանձել, որ այդ կարևոր բանին հոգ տանի:

Ուստի նա Խաղունի ցեղից Վահրիճ անունով մի մարդու, որ հարգված էր Հայաստանում, իրեն հավատարիմ էր և շատ փափագում էր այդ գործին, պատգամավոր ուղարկեց հիշյալ Հաբելի մոտ: Նրան հետն առած՝ միասին գնացին և Դանիելից լավ հմտացան վաղուց գրված տառերի շարքին, որ դասավորված էր հունարենի օրինակով, բերին մատուցեցին Մեծ Սահակին ու Մեսրոպին, որոնք սովորելով ու երեխաների էլ վարժեցնելով քիչ տարիներ, համոզվեցին, որ այդ նշանագրերը, այդ մուրացված գծագրությունը, ընդունակ չէր վանկ առ վանկ ճիշտ արտահայտելու հայերեն բառերի հնչյունները:

## *ԳԼ. ԾԳ. ՄԵՍՐՈՊՅԱՆ ՆՇԱՆԱԳՐԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՏՐՎԵՑԻՆ ԵՐԿՆԱՅԻՆ ՇՆՈՐՀՈՎ*

*Սրանից հետո ինքը Մեսրոպը աշակերտներով իջնում է Միջագետք նույն Դանիելի մոտ, և նախկինից ավելի բան չգտնելով՝ անցնում է Եդեսիա, Պղատոն անունով մի հեթանոս ճարտասանի մոտ, որ դիվանի պետն էր: Նա ուրախությամբ ընդունեց, և ինչքան որ հայերեն խոսքեր միտքը բերում էր՝ հավաքելով և շատ ջանք թափելով օգուտ չունեցավ հռետորը, և խոստովանեց իր տգիտությունը: Բայց նա ասաց, թե ինքն առաջ ունեցել է մի ուսուցիչ, շատ հմուտ մարդ, որ հետո ճարտարների գրվածքներն Եդեսիայի դիվանից առնելով գնացել ու քրիստոնեություն է ընդունել, անունը Եպիփանոս. «Նրան,– ասաց,– փնտրի՛ր գտի՛ր, որ քո փափագը կատարի»:*

*Այն ժամանակ Մեսրոպը Բաբիլոս եպիսկոպոսից օգնություն գտնելով՝ Փյունիկեով անցնում դիմում է Սամոս[4], որովհետև Եպիփանոսը մեռած է լինում, թողնելով մի աշակերտ Հռոփանոս անունով, որ հունարեն գրության հրաշալի արվեստ ուներ և առանձնացել էր Սամոսում: Մեսրոպը գնում է սրա մոտ և սրանից էլ շահ չգտնելով՝ ապավինում է աղոթքի: Եվ տեսնում է ո՛չ երազ քնի մեջ, ո՛չ տեսիլք արթնության մեջ, այլ սրտի գործարանում նրա հոգու աչքերին երևում է աջ ձեռքի թաթ՝ քարի վրա գրելիս, այնպես, որ քարը գծերի հետքը պահում էր, ինչպես ձյունի վրա: Եվ ոչ միայն երևաց, այլև բոլոր (գրերի) հանգամանքները նրա մտքում հավաքվեցին ինչպես մի ամանում: Եվ աղոթքից վեր կենալով ստեղծեց մեր նշանագրերը՝ Հռոփանոսի հետ ձևակերպելով Մեսրոպից պատրաստված գրերը, հայերեն տառերը ճիշտ հանդիպեցնելով հունարենի հնչյուններին: Եվ իսկույն ձեռնարկեցին թարգմանության, խորհրդաբար սկսելով (Սողոմոնի) Առակներից, ամբողջ քսաներկու հայտնի գրերը և Նոր Կտակարանը թարգմանում է հայերեն լեզվի[5], նույնպես և նրա աշակերտները, Հոհան Եկեղեցացին և Հովսեփ Պաղնացին, միևնույն ժամանակ իր ավելի փոքր աշակերտներին սովորեցնել տալով գրչության արվեստը:*

## *ԳԼ. ԾԴ. ՀԱՅՈՑ, ՎՐԱՑ ԵՎ ԱՂՎԱՆԻՑ ԴՊՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

*Արկադը վախճանվելով՝ նրա տեղը թագավորեց նրա որդին, որ կոչվեց Թեոդոս Փոքր. նա նույնպիսի բարեկամություն պահպանեց մեր երկրի և մեր Վռամշապուհ թագավորի հետ, բայց իր մասը[6] նրան չվստահեց, այլ իրեն պահեց՝ գործակալներով, և պարսից Հազկերտ*

*թագավորի հետ խաղաղություն կնքեց: Այս ժամանակները եկավ Մեսրոպը, բերելով մեր լեզվի նշանագրերը: Նա Վռամշապուհի և Մեծ Սահակի հրամանով ընտրությամբ երեխաներ հավաքեց, ուշիմ, առողջակազմ, լավ ձայնով և երկար շնչառությամբ[7], բոլոր գավառներում դպրոցներ հիմնեց և պարսից բաժնի բոլոր կողմերը սովորեցրեց, բացի հունական մասից, որոնք ձեռնադրության փոխարեն տուժեցին, որովհետև Կեսարիայի աթոռին ենթարկվելով՝ պետք է հունարեն գիր և լեզու գործածեին և ոչ ասորերեն:*

*Մեսրոպը Վրաստան գնալով՝ նրանց համար էլ, իրեն արված երկ-*

**Վրաց այբուբենը**

| Տառերի ձևը | Տառադարձությունը | Տառերի ձևը | Տառադարձությունը |
|---|---|---|---|
| Ⴀ | a | Ⴒ | t |
| Ⴁ | b | Ⴓ | u |
| Ⴂ | g | Ⴣ | vi |
| Ⴃ | d | Ⴔ | p' |
| Ⴄ | e | Ⴕ | k' |
| Ⴅ | v | Ⴖ | γ |
| Ⴆ | z | Ⴗ | q |
| Ⴡ | ee,h | Ⴘ | š |
| Ⴇ | t' | Ⴙ | tš |
| Ⴈ | i | Ⴚ | ts |
| Ⴉ | k | Ⴛ | dz |
| Ⴊ | l | Ⴜ | ts' |
| Ⴋ | m | Ⴝ | tš' |
| Ⴌ | n | Ⴞ | ẖ |
| Ⴢ | ĭ | Ⴤ | ẖ |
| Ⴍ | o | Ⴟ | dž |
| Ⴎ | p | Ⴠ | h |
| Ⴏ | ž | Ⴥ | ho |
| Ⴐ | r |  | f |
| Ⴑ | s |  | ə |

**Աղվանից այբուբենը**

| Տառերի ձևը | Տառադարձությունը | Տառերի ձևը | Տառադարձությունը | Տառերի ձևը | Տառադարձությունը |
|---|---|---|---|---|---|
| [illegible] | ա | [illegible] | ճ | [illegible] | խ |
| [illegible] | ս | [illegible] | գ | [illegible] | ծ |
| [illegible] | գ | [illegible] | կ | [illegible] | , |
| [illegible] | գ | [illegible] | լ | [illegible] | պ |
| [illegible] | ե | [illegible] | հ | [illegible] | փ |
| [illegible] | գ | [illegible] | հ | [illegible] | կ |
| [illegible] | է | [illegible] | ա | [illegible] | ս |
| [illegible] | ժ | [illegible] | ց | [illegible] | վ |
| [illegible] | թ | [illegible] | ո | [illegible] | տ |
| [illegible] | ճ | [illegible] | , | [illegible] | ս |
| [illegible] | յ | [illegible] | մ | [illegible] | ի |
| [illegible] | ժ | [illegible] | կ | [illegible] | ծ |
| [illegible] | ի | [illegible] | ն | [illegible] | ց |
| [illegible] | շ | [illegible] | ջ | [illegible] | յ |
| [illegible] | լ | [illegible] | շ | [illegible] | փ |
| [illegible] | ի | [illegible] | չ | [illegible] | ք |
| [illegible] | խ | [illegible] | ու |  |  |
| [illegible] | ղ | [illegible] | տ |  |  |

***Մաշտոցաստեղծ վրաց և աղվանից գրերը***

*նային շնորհով, ստեղծում է նշանագրեր, մի ոմն Ջաղայի հետ, որ հունարեն և հայ լեզուների թարգմանիչ էր. օժանդակություն գտնելով նրանց Բակուր թագավորից և Մովսես եպիսկոպոսից: Ընտրում է երեխաներ, բաժանում է երկու դաս, և նրանց համար ուսուցիչներ է թողնում իր աշակերտներից Տեր Խորձենացուն և Մուշե Տարոնացուն:*

*Ինքն իջնում է Աղվանք, նրանց Արսվաղեն թագավորի և Երեմիա եպիսկոպոսապետի մոտ, որոնք հոժարությամբ հանձն առան նրա ուսումը և նրան հանձնեցին ընտիր երեխաներ: Նա կանչեց Բենիամին անունով մի շնորհալի թարգմանչի, որին անմիջապես ուղարկեց Սյունիքի տեր երիտասարդ Վասակը, իր Անանիա եպիսկոպոսի միջոցով, որոնց (օգնությամբ) նա նշանագրեր ստեղծեց գարգարացիների այն կոկորդաձայն, կոշտ, խժական, կոպիտ լեզվի համար: Այնտեղ վերակացու թողնելով իր Հովնաթան աշակերտին, նաև արքունական դռանը քահանաներ նշանակելով՝ ինքը վերադառնում է Հայաստան և տեսնում է, որ Մեծ Սահակը զբաղված է (Սուրբ Գրքի) թարգմանությամբ ասորերենից, հունարեն չգտնվելու պատճառով: Որովհետև նախ Մեհրուժանն այրել էր հունարեն գրքերը մեր ամբողջ երկրում, իսկ այնուհետև, երբ Հայաստանը բաժանվեց, պարսիկ վերակացուներն իրենց մասում ոչ ոքի թույլ չէին տալիս հունարեն սովորել, այլ միայն ասորերեն:*

## *Գլ. ԿԷ. ՄԵԾ ՍԱՀԱԿԻ ԵՎ ԵՐԱՆԵԼԻ ՄԱՇՏՈՑԻ ԱՅՍ ԱՇԽԱՐՀԻՑ ՓՈԽՎԵԼԸ*

*Վռամը քսանմեկ տարի պարսից վրա թագավորելուց հետո մեռնում է, տերությունն իր Հազկերտ որդուն թողնելով: ...Այդ ժամանակ Մեծ Սահակի վրա մահվան հիվանդություն հասավ. աշակերտները նրան առան փոխադրեցին Բլուր կոչված գյուղը... Այստեղ հասավ նրա վախճանը, հիսունմեկ տարի եպիսկոպոսապետություն անելուց հետո՝ սկսելով Հայոց վերջին Խոսրով թագավորի երրորդ տարուց մինչև պարսից Հազկերտ թագավորի առաջին տարվա սկիզբը, նավասարդ ամսի վերջին, իր ծննդյան օրը:*

*Բայց նրա պատվական մարմինը վերցրին իր սարկավագապետ Երեմիան իր աշակերտակիցներով, ... տարան թաղեցին իրենց Աշտիշատ գյուղում, որ գտնվում էր Տարոն գավառում:*

*Սուրբ Սահակի վախճանվելուց վեց ամիս հետո, մեհեկան ամսի տասներեքին, երանելի Մեսրոպն էլ այս աշխարհից փոխվեց Վաղարշապատ քաղաքում, գերազանցելով բոլոր առաքինի մարդկանց, որպիսիք այն ժամանակ կային: Որովհետև ամբարտավանությունը և*

*մարդահաճությունը նրա վարքում երբեք տեղ չգտան, այլ հեզ, բարյացակամ և բարեմիտ լինելով, երևում էր բոլորին երկնայինների սովորությամբ զարդարված: Որովհետև նա հրեշտակի տեսք ուներ, բեղմնավոր միտք, պայծառ էր խոսքով, գործերով ժուժկալ, մարմնով փառահեղ, սովորություններով աննման, խորհրդակցությամբ մեծ, հավատով ուղիղ, հույսով համբերող, սիրով անկեղծ, ուսուցանելիս անձանձրույթ: Բայց որովհետև բոլոր բարեմասնություններն անկարող եմ թվել, խոսքս կդարձնեմ նրա մարմնի հուղարկավորությանը:*

*Ինչպես լսեցի բազմաթիվ և արժանահավատ անձերից, խաչի աղոտ ձևով լույս էր շողում այն տան վրա, որտեղ երանելին հոգին ավանդեց. և շուտով չանհետացավ այս շողքը, քչերին տեսանելի չեղավ, այլ ամբողջ բազմությանը, այնպես որ շատ անհավատներ մկրտվեցին: Այս ժամանակ հավաքված բազմության մեջ աղմուկ և չփոթություն ծագեց՝ այն պարկեշտ մարմինը թաղելու (տեղի) պատճառով, որ դեռ մահից առաջ մեռելության վարժեցրել էր իրեն: Բաժանվել էին երեք խմբի. մի մասն առաջարկում էր տանել Տարոն՝ իր ծննդավայրը, մյուսները՝ տանել Գողթն, որտեղ առաջին անգամ ուսուցել էր, մի մասն էլ առաջարկում էր թաղել հենց Վաղարշապատ քաղաքում, սրբերի հանգստարանում: Բայց հաղթեց քաջ Վահան Ամատունին, որ ավելի ջերմեռանդ էր հավատով և հզոր էր մարմնավորապես. որովհետև պարսիկներն այդ ժամանակ նրան էին վստահել մեր Հայոց երկրի հազարապետությունը: Նա մարմինը վերցրեց և արժանավայել հուղարկավորությամբ տարավ իր գյուղը՝ Օշական: Եվ նույն լուսեղեն խաչի երևույթը դագաղի վրա գնում էր դեմ հանդիման ժողովրդին, մինչև նրան հողին հանձնեցին Վահանը և նրա սպասավոր Թաթիկը, որից հետո նշանն աներևույթ եղավ: Իսկ եպիսկոպոսապետության աթոռը իբրև տեղակալ նստեց երանելի Մեսրոպի հրամանով նրա աշակերտը՝ Հովսեփ քահանան, որ Վայոց ձորի Հողոցիմ գյուղից էր:*

*1. Խոսքնականավոր աստվածաբան, եկեղեցական գործիչ Հովհան Ոսկեբերանի մասին է, որի աքսորը բողոքի մեծ շարժում սկսեց Կոստանդնուպոլսում:*

*2. Այսինքն՝ Բյուզանդական կայսրությունը:*

*3. Նկատի ունի Սասանյան արքա Վռամ IV-ին (388-399):*

*4. Պետք է ուղղել Սամոսատ:*

*5. Ակնհայտ չափազանցություն է, քանզի խոսք չի կարող լինել ամբողջ Աստվածաշնչի թարգմանության մասին, այլ միայն թարգմանական գործընթացի սկզբի:*

*6. Այսինքն՝ Արևմտյան Հայաստանը:*

*7. Այսինքն՝ փափկաձայն և երկայն շնչառությամբ:*

# ՀԱՅՈՑ ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏՆ ԸՍՏ ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑՈՒ

## ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Դրվագ Ա*

***Գլ. Ժ.*** *Սրա (Վռամշապուհի) թագավորության ժամանակ ամենախնամ Աստվածը հոգածության շնորհ տվեց Մաշտոց անունով մի արդար մարդու, որը Տարոն գավառից էր, Հացեկաց գյուղից, որդին էր Վարդան անունով մի մարդու: Մանուկ հասակում սովորելով հունարեն դպրությունը, Մաշտոցը Հայոց արքա Խոսրովի արքունիքում զինվորական ծառայության էր և կարգված արքունի մատենագիր դպրաց խմբի մեջ, քանի որ արքունի դպիրներն այն ժամանակ Հայոց թագավորների վճիռների ու հրովարտակների գործը կատարում էին ասորերեն ու հունարեն գրերով: Եվ այնտեղ մի քանի տարի անթերի սպասավորելով, հետո ցանկացավ մտնել վանականների կարգը: Գնաց շատ միաբաններ ունեցող մի վանք և վանական հանդերձ հագնելով, եղավ բոլորի մեջ ամենաընտիրն ու ամենաերևելին: Նա հրաժարվեց աշխարհական ու երկրային ամեն տեսակ զբաղմունքներից: Ապա անապատական դառնալով՝ զարմանալիորեն հռչակավոր անուն ձեռք բերեց: Շատ վայրերի քարանձավաց անապատներում ապրեց մեծ առաքինությամբ և խստամբեր վարքով, բազում ուրիշ սուրբ կրոնավորների ու աղոթասեր միաբանների հետ միասին՝ մինչև Խոսրովի եղբայր և Հայոց արքա Վռամշապուհի հինգերորդ տարին: Թե որևէ մեկը ցանկանա այս մասին ավելի հավաստի իմանալ, այսինքն՝ նրա կենսագրության, իր հայերեն նշանագրերի մասին, թե ե՛րբ կամ ո՛ւր և կամ ո՛ւմ ձեռքով են ստեղծվել՝ Հայոց թագավոր Վռամշապուհի ջերմեռանդ խնդրանքով, կարող է կարդալ ու տեղեկանալ նույն երանելի Մաշտոցի սիրելի աշակերտ Կորյունի գրքի պատմությունից: Հոգևոր այր Կորյունն էր, որ առաջին անգամ ճշմարտապես գրեց այս բոլորը: Որտեղից և մենք ստուգապես տեղեկացանք՝ բազում անգամ կարդալով:*

*Եվ այսպես, ամենախնամ մարդասեր Աստվածն ընդունեց երանելի այր Մաշտոցի բազմաժամանակյա մտածությունը և իր ողորմության հոգով զորացրեց նրան: Որովհետև երանելի Մաշտոցն անվերջ հոգալով տրտմում էր՝ տեսնելով Հայաստան աշխարհիս մանկանց ջանքերը, առավել ևս՝ ծախսերը, երբ նրանք անպատմելի ծախսերով, հեռագնաց ճանապարհներով և բազմաժամանակյա դեգերումներով իրենց օրերն էին մաշում ասորական գիտության դպրոցներում: Եկե-*

*ղեցական արարողությունները և Սուրբ Գրքի ընթերցանությունները Հայաստանի ժողովրդի վանքերում ու եկեղեցիներում կատարվում էին ասորերեն, որից էլ ոչինչ չէին հասկանում կամ օգտվում այսպիսի մեծ երկրի բնակիչները: Եվ ասորերեն լեզուն չհասկանալուց եկեղեցական պաշտոնյաների աշխատանքն ու ժողովրդի ջանքերն ապարդյուն էին դառնում: Եվ երանելի այր Մաշտոցն այս մասին երկար ժամանակ խորհում էր ու լալիս իր ներսում. չէ՞ որ կային հայերեն լեզվի նշանագրեր, որոնցով հնարավոր էր սեփական ձայնով և ոչ թե մուրացածո լեզվով, եկեղեցիներում շահել տղամարդկանց ու կանանց և առհասարակ ամբողջ բազմության սրտերը:*

*Սուրբ Հոգու հորդորանքով զորացած գալով Հայոց Սուրբ կաթողիկոս Սահակի մոտ, Մաշտոցը նրան զեկուցեց իր բազմաժամանակյա մտածության խնդիրը և նրանից ստացավ քաջալերանքի ավետիս, թե «Զորացի՛ր և պի՛նդ կաց: Ա՛ռ քեզ հետ և ուրիշ օգնականներ քահանաներից, որոնց ես ինքս կընտրեմ: Եվ ուր որ կղժվարանաք վանկերը կարգավորելիս, բերեք ես ուղղեմ, քանի որ շատ է դյուրին այդ փնտրածդ խնդրի լուծումը: Սակայն նախ անհրաժեշտ է, որ մենք թագավորին հայտնենք այսպիսի մեծ խնդրի կարևորությունը: Քանի որ ոչ այնքան շատ օրեր առաջ եկեղեցում խոսք եղավ այդպիսի նշանագրերի պահանջի մասին, մեկը թագավորին ասաց, թե հայերեն նշանագրեր է տեսել մի գյուղում, ինչ որ եպիսկոպոսի մոտ: Եվ թագավորը հիշեց այս ասածը, քանզի ինձ էլ նա է պատմել»:*

*Եվ Հայոց Սուրբ կաթողիկոսը, երանելի Մաշտոցի հետ միասին, մտնելով Վռամշապուհ թագավորի մոտ, նրան բացատրեց գործի կարևորությունը: Թագավորն ինքն էլ հիշեց այդ խնդրի մասին վանականի խոսածն իր հետ և պատմելով ուրախացրեց: Եվ նրանք այս լսելով թագավորից՝ նրան փութացրին, ասելով. «Տնտեսի՛ր, որ քո ժամանակո՛ւմ լինի Հայոց աշխարհի համար մեծ և օգտաբեր այս գյուտը, որն ապագայում պիտի քեզ բերի առավել մեծ շահ, անմոռաց հիշատակ և երկնային վայելքների օգուտ, քան քո թագավորական իշխանությունն է կամ քեզնից առաջ եղած քո Արշակունյաց տոհմակից նախնիներինը»:*

*Եվ թագավորը լսելով այս՝ ուրախացավ, փառք տվեց Աստծուն, որ իր թագավորության ժամանակ նա հոգևոր կյանքի այսպիսի ցանկություն պարգևեց Հայոց աշխարհին: Ապա շտապով մեկին, որ իր ծնողների կողմից Վահրիճ անունն էր ստացել, դեսպան ուղարկեց Հաբել անունով մի քահանայի մոտ, որն առաջներում արքային ասել էր, թե Դանիել եպիսկոպոսի մոտ հայերեն գրեր կան ու ինքն էլ բարե-*

*պաշտ այդ Դանիելի մերձավոր մարդն էր: Իսկ երանելի Հաբելը Վահրիճից ընդունելով հրովարտակը և իմանալով իրողությունը, ճանապարհվեց և շատ շուտով հասավ սքանչելի եպիսկոպոս Դանիելի մոտ: Եվ այնտեղ նա ինքը Դանիելից տեղեկացավ նշանագրերի կարգի մասին, ապա նշանագրերն առնելով նրանից՝ հասցրեց Հայոց թագավորին, Սուրբ հայրապետ Սահակին և երանելի Մաշտոցին: Իսկ արքան, Սուրբ կաթողիկոս Սահակի ու երանելի Մաշտոցի հետ, նշանագրերն ընդունելով Հաբելից, ուրախացավ:*

*Սակայն տեղեկանալով նրանք իմացան, որ այն նշանագրերն իրենց մուրացածո գծագրությամբ բավական չեն հայերեն բոլոր վանկերը հնչյունաբանական ամբողջ ճշգրտությամբ փոփոխելու համար:*

*Դրանից հետո Մեսրոպն ինքն իր աշակերտների հետ գնաց Միջագետք, նույն Դանիելի մոտ և, առաջինից ավելի տառեր չգտնելով, անցավ Եդեսիա, այնտեղի դիվանի իշխան Պիղատոս անունով մի հեթանոս ճարտասանի մոտ: Նա ուրախությամբ ընդունեց Մեսրոպին, իր իմացած հայերեն խոսքի վրա շատ ջանաց, բայց ապարդյուն: Իր տգիտությունը խոստովանեց հռետորը, հայտնեց, որ կա մեկը, Եպիփանոս անունով՝ հույժ հմուտ, որ իր ուսուցիչն է եղել առաջուց և Եդեսիայի նույն դիվանից վերցնելով գիտնականների գրքերը, գնացել, քրիստոնեական հավատին է դարձել: Որ փնտրես ու գտնես, ասաց, քո ցանկությունը կկատարի:*

*Այն ժամանակ Մեսրոպը, Բաբելոս եպիսկոպոսից օգնություն ստանալով և Փյունիկեից անցնելով, գնաց Սամոս[1]: Այնտեղ էլ Եպիփանոսը վախճանվել էր՝ թողնելով Հռուփանոս անունով իր մի աշակերտին, որը հելլենական գրչության հրաշալի իր արվեստով առանձնացել էր Սամոսում: Գնալով սրա մոտ և դարձյալ ոչ մի օգուտ չստանալով՝ Մեսրոպը հույսը դրեց աղոթքի վրա: Եվ տեսավ,— ոչ այն է երազ էր քնի մեջ, ոչ տեսիլք էր արթմնի,— այլ սրտի խորքերում երևութացյալ հոգին աջ ձեռքի մի թաթով գրում էր ժայռի վրա: Եվ ինչպես ձյան վրա՝ ժայռը պահպանում էր թաթի գրածի հետքը: Եվ այսքանը ոչ միայն մնաց իբրև երևույթ, այլև բոլոր մանրամասները հավաքվեցին նրա մտքի մեջ՝ որպես մի ամանում: Եվ աղոթքից վեր կենալով՝ Մեսրոպն ստեղծեց մեր նշանագրերը, Հռուփանոսի հետ միասին կերպ ու ձև տվեց հայերեն այբուբենին ըստ հունարեն տառերի անսայթաքության:*

*Եվ այսպես, Հայոց նշանագրերը գտնելով՝ երանելի Մաշտոցը գործի ձեռնարկեց: Հայոց Սուրբ հայրապետ Սահակն էլ գործը հարմա-*

*րեցնելով, տառերի դասավորության և հնչյունային ուղղաձայնության դյուրին ճանապարհ ցույց տալով, ինչպես նաև հայոց քահանաներից նրան օգնականներ կարգելով ճարտարաբան ու խելամիտ մարդկանց, որոնք, երանելի Մաշտոցի պես, մի քիչ գիտեին հունարեն վանկ-վանկ ընթերցելը: Դրանցից առաջինի անունն էր Հոհան՝ Եկեղյաց գավառից, երկրորդինը՝ Հովսեփ, Պաղանական տնից, երրորդինը՝ Տեր, Խորձյանքից, չորրորդինը՝ Մուշե, Տարոնից: Նրանց օգնությամբ երանելի Մաշտոցը կարողացավ հայերեն այբուբենը կարգավորել-դասավորել ըստ հունարենի հնչյունային-վանկական անսայթաք դասավորության՝ հաճախ հարցնելով ու Սուրբ Սահակ կաթողիկոսից իմանալով հունարեն տառերի օրինակները: Պարզ է, որ նրանք ուղղակի չէին կարող անսխալ կատարել գործն, առանց առաջնորդվելու Սուրբ հայրապետ Սահակի կողմից, որը վարժվածությամբ առլեցուն՝ բարձր էր հունաց շատ գիտնականներից՝ լինելով կատարելապես հմուտ հունարեն տառերի հնչյունաբանությանը և հռետորական հորդասաց մեկնաբանություններին, առավել ևս՝ ցույց էր տալիս իր տեղյակությունը փիլիսոփայական արվեստին:*

*Այնուհետև, Փրկչի առաջնորդությամբ դասավորելով հայերեն նշանագիր տառերը և հելլենական կարգին հարմարեցնելով, ցանկացան դպրոցներ բացել և ուսուցանել մանկանց բազմություններ, քանզի ամեն մարդ սրտագին փափագում էր հայերեն գիտության ուսումը և ուրախ էր, որ փրկվում էր ասորերենի պատճառած տանջանքներից, որպես խավարից դեպի լույս ելներ: Սակայն տարակուսանքի մեջ էին Սուրբ Գիրքը չունենալու պատճառով, քանի որ հայերեն լեզվով դեռևս չկային եկեղեցու Սուրբ Կտակարանները: Եվ երանելի Մաշտոցն ու նրա հետ եղած պատվական քահանաները չէին կարող համարձակվել ձեռնարկելու մի այսպիսի խիստ կարևոր գործի, ինչպես հունարենից հայերեն լեզվով թարգմանելը, որովհետև դեռ լրիվ տեղյակ չէին հունարենի ուսման գիտական հրահանգին:*

***Գլ. ԺԱ.*** *Ապա Հայոց աշխարհի բոլոր ավագ քահանաները, երանելի Մաշտոցով և Հայոց աշխարհի բոլոր նախարարներով ու մեծամեծ տանուտերներով հանդերձ, հավաքվեցին Հայոց թագավոր Վռամշապուհի մոտ և թագավորի հետ միասին սկսեցին աղաչել Սահակ Սուրբ կաթողիկոսին, որպեսզի նա իր անձը նվիրի հոգևոր աշխատանքի և աստվածաշունչ Կտակարանները հունարեն լեզվից թարգմանի հայերեն լեզվի: Եվ ավագ դասերի քահանաները սուրբ քահանայապետին ասում էին. ...«Հայաստան աշխարհում էլ չկա ուրիշ մի մարդ, որ հնարավորություն ունենա ձեռնարկելու այդպիսի*

*մի մեծ գործի: Զէ՞ որ մենք չկարողացանք հմտանալ և լինել տեղյակ այնքան արվեստական գիտելիքներին, ինչպես վերին օգնականությամբ քեզ էր շնորհվել ճարտարության զորությունը՝ հանուն քո առաքինասեր և պարկեշտ հոգու, որպեսզի ճշգրտապես նմանվելով ընդօրինակես երանելի քո հայր Ներսեսի[2] վարքը»:*

*Եվ հայոց բարեպաշտ կաթողիկոս Սուրբ Սահակն այս ամենը լսելով Վռամշապուհ թագավորից, հայոց երանելի Մաշտոցից և քահանաների ամբողջ միաբանությունից, առավելապես՝ հայոց ավագ տանուտերներից և բոլոր նախարարներից, հոգով զվարճացավ, փառավորելով ամենքի Փրկիչ Հիսուս Քրիստոսին: Եվ կամավոր հոժարությամբ իր անձը տվեց գործին, պանծացրեց Աստծո գործակցությունը, որը նրան տվել էր առավելապես գիտության այնպիսի շնորհներ: Եվ անվեհեր կերպով տքնելով գիշեր ու ցերեկ, թարգմանեց բոլոր Կտակարանները, Սուրբ Հոգու ճշմարիտ մարգարեների խոսածները և հաստատելով կնքեց Նոր Կտակարանի լուսավոր ու կենսատու քարոզությունններն երջանիկ առաքյալներով ու նույն Հոգով:*

*Եվ երբ հայոց Սուրբ հայրապետ Սահակն ավարտեց հոգևոր մեծ վաստակի գործը, նրանից հետո շուտով դպրոցներ բացեցին ուսումնական խմբերի համար: Բազմացան գրիչների դասերը, որոնք գերազանցում էին միմյանց: Սուրբ եկեղեցիների արարողությունները զարդարվեցին: Կանանց ու տղամարդկանց բազմությունները ճոխացան Փրկչի տոների ժամանակ և մարտիրոսացածների վկայարաններում: Գոհանալով հոգևոր մխիթարության շահերով, մեծ խորհրդի հաղորդությունից, երջանկացած նրանք իրենց տներն էին գնում՝ մեծամեծներն ու տղաները սաղմոսելով և կցորդներն ասելով ամենայն տեղ՝ հրապարակներում, փողոցներում և տներում:*

*Պայծառացան եկեղեցիները: Շուք ստացան սրբերի վկայարանները՝ նրանցում միշտ նորոգվող աղոթքներով ու ընծաներով: Անվերջ բխում-հոսում էին մեկնությունների խոսքերը, որոնք մարգարեների գաղտնին հայտնի դարձնելով՝ ամբողջ ժողովրդի առաջ էին դնում հոգևոր կերակուրներով լեցուն սեղանները: Իմաստության հետևողներն էլ ճաշակում էին դրանք և իրենց քիմքերը քաղցրացնում ըստ սաղմոսերգուի խոսքի, որ ասում է՝ «Վարդապետության խոսքերն առավել են, քան խորիսխը մեղվի»[3]: Եվ որպեսզի միանգամից ասեմ, ըստ Եսայի սուրբ մարգարեի խոսքի, թե հայոց ամբողջ երկիրն Աստծո գիտությամբ լցվեց Սուրբ Սահակ հայրապետի հոգևոր քարոզներից, որոնք բազում վտակների պես ծովերն էին լցնում[4]: Եվ*

*ամենախնամ Փրկիչ Քրիստոսի շնորհիվ այս ամենը կատարվեց Վռամշապուհի ժամանակ, ինչպես վերն էինք գրել: Եվ լուսավորվեց Հայոց աշխարհը: Սրանից հետո Վռամշապուհն ապրեց շատ տարիներ և հասնելով խոր ծերության, վախճանվեց իր անկողնում, խաղաղության մեջ, Հայոց աշխարհում:*

*1. Այստեղ և հետագայում Սամոսը պետք է ուղղել Սամոսատ:*
*2. Նկատի ունի Ներսես Մեծ Պարթևին:*
*3. **Սաղմոս**, ԺԸ, 11:*
*4. Տե՛ս **Ամբակ.**, Բ, 14:*

## ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ ԵՎ ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՎԻ ՁԵՌՆԱՐԿԱԾ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱԳԻՐ ԴՊՐՈՑ ՈՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼՈՒ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ

### ԿՈՐՅՈՒՆ, ՎԱՐՔ ՄԱՇՏՈՑԻ

***[ԺԹ]***

*Դրանից հետո երկու երանելիներն էլ ուշադրություն դարձրին, որ իրենց ազգի դպրությունն ավելի զարգացնեն և հեշտացնեն: Մեծ Իսահակն սկսեց թարգմանել և գրել իր առաջվա սովորությամբ:*

*Պատահեց դարձյալ, որ նրանք իրենց աշակերտներից երկու եղբայրների[1], [առաջինը] Հովսեփին, որ վերևում հիշեցինք, և երկրորդը՝ [մեկին] Եզնիկ անունով, Այրարատյան գավառից, Կողբ գյուղից[2], ուղարկեցին Ասորոց կողմերը, Եդեսիա քաղաքը, որպեսզի նրանց սուրբ հայրերի ավանդությունններն ասորերեն լեզվից հայերենի դարձնեն ու գրեն:*

*Իսկ թարգմանիչները հասան այնտեղ, ուր ուղարկվեցին, և նրանց պատվերը կատարեցին և [թարգմանությունններն] ուղարկեցին պատվական հայրերին, [իսկ իրենք] անցան, գնացին հունական կողմերը, ուր և ուսանելով և հմտանալով՝ կարգվեցին հելլենական լեզվից թարգմանիչներ:*

*Ապա մեջտեղում մի ժամանակ անցնելուց հետո՝ պատահեց, որ մեր Հայաստան աշխարհից դիմեցին, իջան հունական կողմերը մի քանի եղբայրներ, որոնց առաջինի անունը Ղևոնդես էր, և երկրորդը ես Կորյունս [էի], և Կոստանդինական քաղաքում մոտեցան, հարեցին Եզնիկին, իբրև ընտանեգույն սննդակցի, և այնտեղ միասին կատարեցին հոգևոր պիտույքի խնդիրը: Հետո նրանք աստվածատուր գրքերի*

*հաստատուն օրինակներով և շատ շնորհագիր հայրերի հետագա ավանդություններով և Նիկիական[3] ու Եփեսոսական[4] կանոններով՝ եկան, երևացին Հայոց աշխարհում և հայրերի առաջ դրեցին Սուրբ եկեղեցու Կտակարանները, որ բերել էին իրենք:*

*Իսկ երանելի Սահակն առաջ հունարեն լեզվից հայերեն էր դարձրել եկեղեցական գրքերի[5] ամբողջությունը և շատ սուրբ հայրապետների իմաստություն: Դրանից հետո դարձյալ նա Եզնակի հետ միասին սկսեց [և] առաջվա հանկարծագյուտ շտապովի թարգմանությունները[6] հաստատեց բերված ստույգ օրինակներով: Եվ [Աստվածաշունչ] Գրքի շատ էլ մեկնություն թարգմանեցին:*

*[Ի]*

*Ապա դրանից հետո դարձյալ՝ երանելի Մաշթոցն իր այնպիսի շատ ու բարձրագույն ուսումով սկսեց կարգել և հորինել հաճախագույն, դյուրապատում, շնորհագիր, բազմադիմի ճառեր մարգարեական գրքերի լուսավորությունից ու հյութից, ավետարանական ճշմարիտ հավատքի ամեն ճաշակներով լիքը[7]: Դրանց մեջ՝ ավելի հանդերձյալ կյանքի հարութենական հույսի վերաբերյալ՝ շատ նմանություններ և օրինակներ հերյուրեց, կազմեց աշխարհիս անցավոր բաներից, որպեսզի տխմարներին ու մարմնական բաներով զբաղվածներին հեշտ ընդունելի և հեշտ հասկանալի լինին՝ [նրանց] սթափեցնելու ու զարթեցնելու և խոստացված պարգևների նկատմամբ հիմնովին քաջալերելու համար:*

*[ԻԱ]*

*Եվ այսպես՝ Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի բոլոր կողմերում [Մեսրոպն] իր ամբողջ կյանքի ընթացքում ամառ ու ձմեռ, գիշեր ու ցերեկ, անվեհեր և առանց բնավ հապաղելու, իր իսկ ավետարանական և ողջապատում վարքով ամենափրկիչ Հիսուսի անունը կրեց իր անձի վրա թագավորների, իշխանների ու բոլոր հեթանոսների առաջ և առանց ընդդիմության հակառակորդների կողմից: Եվ ամեն մարդու զարդարեց Քրիստոսի զգեստով ու հոգեպես:*

*[ԻԲ]*

*Եվ մինչդեռ այնպես [Մեսրոպը] իր մոտին եղող մերձավորների հոգևոր եռանդը շարժում էր և շատ խրատական ու զգուշացուցիչ թղթեր էր ուղարկում բոլոր գավառները, հենց միևնույն տարում, երանելի Սահակի մահից վեց ամիս անցնելուց հետո[8], Հայոց բանակը*

*Սուրբ Վարդապետի հետ միասին գտնվում էր Այրարատյան Նոր քաղաքում, և միևնույն հոգեկրոն վարքով հասավ սրբի քրիստոսակոչ վախճանը մի քանի օրվա հիվանդությունից հետո մեհեկան ամսի տասներեքին[9]: Եվ երբ պիտի ձեռնասուն աշակերտների միջից զատվեր և Քրիստոսի գնդին խառնվեր, ցավերից թեթևանալով և սթափվելով՝ վեր կացավ նստեց ժողովի մեջ և ձեռքերը հանապազատարած երկինք բարձրացրած՝ բոլոր մնացորդներին հանձնարարեց Աստծու շնորհքին, նրանց համար օգնություն խնդրեց:*

*Եվ [այնտեղ] ժողոված գլխավոր աշակերտների անուններն այս են. առաջինինը՝ Հովսեփ, որ և սկզբում գրեցինք. երկրորդինը՝ Թադիկ, զգաստ [ու] Վարդապետի հրամանների նկատմամբ շատ զգույշ մարդիկ: Զինվորական կողմից առաջինի անունը՝ Վահան, Ամատունի ցեղից՝ որ Մեծ Հայաստանի հազարապետն էր, և երկրորդինը՝ Հմայակ, Մամիկոնյան տոհմից,— պատվական, երկյուղած [ու] Վարդապետի հրամանները կատարող մարդիկ:*

*Վահանն ու Հմայակը, աշխարհական բազմության հետ, վերցրին նրան ... ու բարձրացան Օշական և այնտեղ մարտիրոսարանի մեջ դրին, օրինավոր հիշատակը կատարեցին, և նրանք ետ դարձան յուրաքանչյուրն իր տեղը:*

*Իսկ երեք տարի անցնելուց հետո՝ Վահան Ամատունուն հաջողվեց՝ քրիստոսասեր ջանքով սքանչելի տաճար կանգնել տաշած, քանդակած քարերով, և տաճարի ներսում շինեց Սրբի գերեզմանը և Քրիստոսի խաչակրոն վկայի, երանելի Մաշթոցի մարմինը փոխադրեց տաճարի գերեզմանը:*

***[ԻԹ]***

*Եվ արդ՝ Երանելիի հավատքի տարիների հաշիվը լինում է քառասուն և հինգ տարի, և հայոց դպրությունից մինչև Սրբի վախճանը՝ երեսուն և հինգ տարի, որ այսպես են համարվում. պարսից արքա Կրմանը թագավորել է վեց տարի և Հազկերտ [Առաջինը] քսան և մեկ տարի [և Վռամը տասնութ տարի], և Վռամի որդի երկրորդ Հազկերտի առաջին տարում վախճանվեց Երանելին:*

*Եվ արդ՝ սուրբ հավատքի տարիների հաշիվն սկսվում է Կրման արքայի չորրորդ տարուց մինչև Վռամի որդի երկրորդ Հազկերտի առաջին տարին, և հայոց դպրությունն սկսվել է Հազկերտ [Առաջինի] ութերորդ տարուց[10]:*

*Եվ մարդասեր Քրիստոսին փառք հավիտյանս. ամեն:*

*1. Խոսքը հոգևոր եղբայրների մասին է:*

*2. Նկատի ունի նշանավոր Եզնիկ Կողբացուն՝ «Եղծ աղանդոց» երկասիրության հեղինակին:*

*3. Ակնարկը վերաբերում է 325 թ. Նիկիա քաղաքում Կոստանդին կայսեր հրավիրած տիեզերական եկեղեցաժողովի կողմից ընդունված 20 կանոններին:*

*4. Եփեսոսի ժողովը հրավիրվել է 431 թվականին, այն ևս ընդունել է համապատասխան կանոններ:*

*5. Այսինքն՝ Ժամագիրքը, Պատարագամատույցը, Տոնականը և այլ եկեղեցական գրքեր, որոնք գործածվում են ժամասացության ընթացքում:*

*6. Նկատի ունի Աստվածաշնչի գրքերի նախնական թարգմանական փորձերը:*

*7. Հիմք ընդունելով Կորյունի սույն վկայությունը՝ ուսումնասիրողները եկել են այն եզրակացության, որ մեր հին գրականության մեջ «Յաճախապատում ճառք» անունով հանդիպող ճառերի ժողովածուն պատկանել է Մեսրոպ Մաշտոցի գրչին, թեև ինչ-ինչ նկատառումներով այն վերագրվել է նաև Գրիգոր Լուսավորչին:*

*8. Սահակ Պարթևը մահացել է Նավասարդի 30-ին, այսինքն՝ 439 թ. սեպտեմբերի 7-ին, հինգշաբթի օրը:*

*9. Մեսրոպ Մաշտոցը մահացել է Մեհեկան ամսի 13-ին, այսինքն՝ 440 թ. փետրվարի 17-ին, շաբաթ օրը:*

*10. Ըստ այս հաշվարկների, որոնք մոտ են իրականությանը՝ գրերի գյուտի սկիզբը եղել է 404-405 թվականներին:*

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՀԱՅԱԳԻՐ ԴՊՐՈՑԻ ՈՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՄԱՍԻՆ

### *Գիրք Գ*

### *ԳԼ. ԾԷ. ՍԱՀԱԿԻ ԹՈՒՂԹԸ ԹԵՈԴՈՍ [ԿԱՅՍՐԻՆ]*

*... Գիտեմ, որ մեր նեղության համբավը հասած կլինի ինքնակալիդ լսողությանը, ուստի քո բարերարության գթասրտության վրա հույս դնելով ապավինեցի ձեզ, բայց իմ վիճակում ընդունելություն չգտա այստեղի վերակացուների հրամանով: Մեզ այնքան ատեցին, որ մինչև իսկ չընդունեցին այն նշանագրերը, որ բերել էր նույն այս մարդը[1], որին ուղարկեցի ձեր բարերարության մոտ. (այդ նշանագրերը) նա գտել էր երկարատև դառն աշխատանքով Ասորիքում: Ուստի խնդրում եմ ձեր*



***Թեոդոսիոս II կայսր***

*տերության բարեհաճությունը, որ մեզ այստեղ մեր բաժնում իշխանությունից չզրկեն. հրամայեցեք, որ ընդունեն մեզ և մեր ուսումը...*

### ԹԵՈԴՈՍ [ԿԱՅՍՐԻ] ԹՈՒՂԹԸ ՍԱՀԱԿԻՆ

*... Մենք պահանջեցինք տեսնել Թուղթդ և վերահասու եղանք գրածներիդ: Քեզ շատ մեղադրեցինք... Մանավանդ սրանում ենք քեզ մեղադրում, որ արհամարհելով մեր քաղաքում[2] եղող ճարտարներին, ինչ-որ ասորիների մոտ էիր որոնում իմաստության գյուտը: Այս պատճառով մենք բարեհաճ էինք, որ մեր ծառաներն այդտեղ արհամարհեցին այդպիսի ուսումը: Բայց որովհետև Մեսրոպը հետո մեզ պատմեց, թե այդ արվեստը եկավ երկնային շնորհով, մենք գրեցինք, որ ամենայն փութաջանությամբ սովորեն, և քեզ պատվով ընդունեն իբրև իրենց իսկական ուսուցիչը: [Իսկ] Մեսրոպին գրեցինք ուսուցիչների շարքում:*

### Գլ. ԾԸ. ՄԵՐ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԿՈՂՄԵՐՆ ՈՒՍՈՒՑԱՆԵԼԸ. ԲՈԼՈՐԻ ԽԱՂԱՂՎԵԼԸ

*... Մեսրոպը և Վարդան ստրատելատը[3] գալով՝ Անատոլ զորավարին գտան մեր սահմանի մոտ հասած: Արքունական հրամանն ստանալով նա ավելի մեծ վստահությամբ և փութաջանությամբ գործը գլուխ բերեց: Որովհետև իշխանները, գործակալները, գլխավորները և առհասարակ այդ կողմում հայտնի մարդիկ իրենց հոժար կամքով, կարծես աստվածային ձայնով հրավիրված, գալիս հավաքվում էին մի տեղ բոլոր քահանայական դասի հետ միասին: Եվ անմիջապես ուսուցման գործն սկսելով՝ արագորեն արևմտյան կողմն էլ սովորեցրին արևելյանի նման:*

### Գլ. Կ. ՄԵՍՐՈՊԻ ԿՐԿԻՆ ՔԱՐՈԶՉՈՒԹՅՈՒՆ ԱՆԵԼԸ ԵՎ ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐԻ՝ ԲՅՈՒԶԱՆԴԻՈՆ ԳՆԱԼԸ

*Մեսրոպը մնալով Շաղգոմք կոչված անապատ և հով տեղերում՝ առաջին խմբերի ուսուցումը վերջացրեց: Նա ոչ թե սովորեցնում էր որպես արվեստ, այլ աշակերտներին կարծես հոգի էր ներշնչում իբրև առաքյալ: Սրանից հետո այնտեղ իր աշակերտներից վերակացուներ թողնելով՝ Սպերում Ղևոնդին և Ենովքին, Դերջանում նրանց Գինդ եպիսկոպոսին, իսկ Եկեղյաց գավառում Դիանանին, ինքը գալիս է*

*Այրարատ և գնում է Գողթն, իր առաջին բնակության գավառը:*

*... Այնուհետև Մեսրոպը ետ եկավ, և նա ու Մեծ Սահակը նույն աշակերտներին, Հովսեփին ու նրա մյուս ընկերոջը Կողբ գյուղից, որի անունն էր Եզնիկ, ուղարկեցին Միջագետք, Եդեսիա քաղաքը, որպեսզի ի՛նչ գրքեր որ այնտեղ գտնվեն առաջին Սուրբ Հայրերից գրված, շուտով մեր լեզվով թարգմանեն ու բերեն, որպեսզի այնուհետև Բյուզանդիոն ուղարկվեն նույն գործով: Նրանք մի քանի ստախոս մարդկանցից հրապուրիչ թղթեր ստանալով՝ իբրև թե Մեծ Սահակը և Մեսրոպը պատրաստվում են ուրիշներին Բյուզանդիոն ուղարկել, իրենք, առանց ուսուցիչների հրամանի այնտեղից ուղղակի չվեցին-գնացին Բյուզանդիոն, նախանձախնդիր լինելով բարի ուսմունքի. և հունարեն գրագիտության մեջ լավ վարժվելով՝ ձեռնարկեցին թարգմանելու և գրելու: Նրանց վրա նախանձելով նրանց աշակերտակից ընկերները, որոնց անուններն էին Ղևոնդ և Կորյուն, ինքնակամ ելան գնացին Բյուզանդիոն նրանց մոտ: Ապա նրանց մոտ են գալիս նաև Հովհանն ու Արձանը, որոնց Սահակն ու Մեսրոպը դեռ ավելի վաղ էին ուղարկել:*

### Գլ. ԿԲ. ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ, ԻՐ ԵՎ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Նրանք, որ չարունակ հետևում են իմաստասիրության և քննում են մաթեմատիկական գիտությունները, ասում են, թե աստղերը լույս են ստանում լուսնից, լուսինը լցվում է արեգակի լույսով, իսկ արեգակն արփային երկնքից. այնպես որ արփին լույսը սփռում է երկու գոտիներում և այս երկու գոտիները լույս են ստանում արեգակից ըստ դասի ըստ շարժման և ըստ ժամանակի: Սրա նման մենք էլ մեր հոգևոր հայրերի իմանալի ճառագայթներից մշտապես ցոլանալով, հարավային կողմերը շրջագայելով հասանք Եդեսիա քաղաքը, թեթևակի նավեցինք դիվանի խորքերի վրայով, այնտեղից անցանք Սուրբ Տեղերին երկրպագելու և կարճ ժամանակ պաղեստինացիների ուսմամբ պարապելու:*

*Այսպիսի շրջագայությամբ մտանք Եգիպտոս: ... Այստեղ [ուսանողները] սովորում են պես-պես գիտություններ Նոր Պղատոնից՝ իմ ուսուցչից, որին անարժան աշակերտ չհանդիսացա և ոչ էլ գիտություն ձեռք բերի անկատար կերպով, թերի ուսումով:*

*Կամենալով նավով Ելլադա գնալ, սաստիկ քամիներով մղվեցինք ընկանք Իտալիա, Սուրբ Պետրոսի և Սուրբ Պողոսի հանգստարան-*

*ները ողջունեցինք և երկար չմնացինք հռոմայեցիների քաղաքում. Ելլադայով անցանք Ատտիկե, քիչ ժամանակ մնացինք Աթենքում: Ձմեռն անցնելուց հետո ճանապարհ ընկանք Բյուզանդիոն՝ մեր հայրենիքին փափագելով:*

## ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑԻՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՅԲՈՒԲԵՆԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՇԽԱՐՀԻ

#### *Գիրք Բ*

***Գլ. Գ.*** *Այն ժամանակ, երբ Թեոդոս Փոքրը հույների կայսրն էր, իսկ Վռամշապուհը՝ Հայոց թագավորը, Հազկերտը՝ պարսից և Եսվաղենը՝ աղվանների, մեծավաստակ Սուրբ Հոգու ընտիր անոթ Մեսրոպ երանելին Աղվանք եկավ մեր Երեմիա հայրապետի ու Եսվաղեն թագավորի մոտ: Սրանք կամավոր կերպով ընդունեցին նրա ուսուցչությունն ըստ Աստծուց նրան շնորհված այն պարգևի, որ Սուրբ Հոգին նրա միջոցով հայերին ու վրացիներին տառեր տվեց: Համաձայնվեցին և նրա մոտ ուսման տվին ընտիր մանուկներ. թարգմանիչ Բենիամինին Սյունիքից կանչեցին: Նրանք եկան Մեսրոպի մոտ. Մեսրոպը նրանց հետ գարգարացիների կոկորդահունչ կոշտ ու կոպիտ խժական լեզվի համար տառեր հնարեց: Այստեղ վերահսկիչ թողեց իր աշակերտ Հովնաթանին, քահանաներ նշանակեց պալատում ու վերադարձավ Հայաստան: Այդտեղից [Մեսրոպն] անցավ Բյուզանդիա՝ Թեոդոս թագավորի մոտ և այնտեղից վերադառնալով [Հայաստան] աշակերտների հետ շրջում էր:*

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ ԻՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

#### *Նախագիտելիք*

*Պատմությունների այս Երրորդ դպրությունը*[1] *պարունակում է պատմական գրվածքների գլուխներ, և նրան կից կան ուրիշ երեք դպրություններ, այսինքն՝ սրանք չորս մատյան են և չորսն էլ միևնույն անցքերի հիշատակարաններն են, որոնք հիշեցնում են Հա-*

*յաստան աշխարհի Թորգոմի որդիների պատմությունները, այսինքն՝ անցած եղելությունների շարքը,— գործերն ու վարքեր Աստծո մարդկանց՝ սուրբ քահանայապետների և աշխարհիս տեր Արշակունի թագավորների ու անվանի մարդկանց՝ զորավարների և քաջ նախարարների՝ մինչև նրանց մահը, այլև (երկրի) խաղաղությունն ու պատերազմները, շինությունն ու ավերմունքներն, արդարությունն ու տնօրինությունը, աստվածապաշտությունն ու անբարեպաշտությունը:*

*Պատմությունն սկսելով Տրդատի որդի Խոսրովի[2] թագավորությունից մինչև Հայոց թագավորների թուլանալը վերջին ժամանակներում[3] և առաջին քահանայապետ Գրիգորի որդի Վրթանեսի քահանայապետությունից[4] մինչև այն վերջինները, որոնց հայոց գլխավոր եպիսկոպոսներն էին[5]՝ մի առ մի կարգով, թվով ու համարով, առանձին-առանձին գլխակարգելով նկարագրեցի: Եվ չորս դպրությունների համար առանձին ցանկեր կազմեցի յուրաքանչյուրի սկզբում՝ մինչև վերջը, որպեսզի օգտվել կարողանան նրանք, որոնք սրտանց փափագում են վերահասու լինել իմ ասելիքներին:*

*1. Փավստոս Բուզանդի «Պատմութիւն Հայոց»-ը միանգամից սկսվում է երրորդ դպրությունից: Առաջին և երկրորդ դպրությունների հարցը դարձել է հայագիտության մեծագույն առեղծվածներից մեկը, որին նվիրված են զգալի թվով ուսումնասիրություններ:*

*2. Այսինքն՝ Խոսրովի գահ բարձրանալու, որն է 330 թվականը, ժամանակներից:*

*3. Այսինքն՝ 380-ական թվականները: Նկատի ունի Արշակունյաց թագավորության թուլացումն ու Հայաստանի առաջին բաժանումը 387 թվականին: Այսպիսով, Փավստոսի Պատմության ժամանակագրական սահմաններն են 330-387 թվականները: Փավստոս Բուզանդի Պատմության բնագիրը, որն այսօր հայտնի է և գտնվում է շրջանառության մեջ, ունի ճիշտ այդ ժամանակային սխեման:*

*4. Վրթանես Ա Պարթևը գահակալել է 333-341 թվականների ընթացքում:*

*5. Ակնարկում է Շահակ Ա Մանազկերտցի (373-377), Զավեն Ա Մանազկերտցի (377-381) և Ասպուրակես Ա Մանազկերտցի (381-386) Հայոց կաթողիկոսներին:*

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՆ ՆԱԽԸՆԹԱՑ ՀԱՅ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. Ա.*** *Հայոց պատմության առաջին գիրքը, որն ստույգ ձևով շարադրել է երանելի այր Ագաթանգեղոսը, սկսվում է Ստահրացի[1] բռնավոր Սասանի որդի Արտաշիրի որդու ձեռքով Արտևանի[2] սպա-*

*նությունից և պատմում է Հայոց երկրի դարձը կռապաշտական անգիտությունից դեպի աստվածաճանաչման ճշմարտությունը՝ Սուրբ նահատակ Գրիգորիսի ձեռքով, որի անվամբ էլ այն կոչում են Գրիգորիսի գիրք: Երկրորդ գիրքը, առաջինի կարգով, սկսում է պատմել Հայոց աշխարհի բազմափոփոխ իրողությունները, սուրբ և պիղծ մարդկանց բարի ու չար արարքները, նրանց վարքն ու գործերը պատերազմների ու խաղաղության օրերում: Այս ամենը մի ոմն Փավստոս Բուզանդացի է պատմում՝ հասնելով մինչև Տիրանի որդի Արշակի թոռ և Պապի որդի Արշակի թագավորությունը[3], որի տիրակալության օրերում Հայոց աշխարհը հնացած ձորձի նման պատովելով երկու ծվենի բաժանվեց: Հենց այստեղ իր պատմության, խոսքն ավարտելով՝ հանգույցը փակում է Փավստոսը: Այս գիրքն էլ են կոչում Հայոց պատմություն:*

*Երրորդ այս պատմությունը, նույն գրքի կարգով, մենք շարադրեցինք մեր տկարությամբ: Իշխանների և սուրբ վարդապետների խոսքով հարկադիր հանձն առանք այս կարևոր գործը, չհամարձակվելով ընդդիմանալ՝ հիշելով Սուրբ Գրքի սպառնալիքներն ու անհնազանդ որդիների առթիվ և ներողամտության խոսքերը հնազանդների ու լսողների մասին: Մեկը մյուսի ետևից դասավորեցինք Հայաստան աշխարհում թագավորության երկու մասի բաժանվելու հետևանքով տեղի ունեցած բազմատեսակ իրողությունները, գործերն ու դեպքերը. անօրեններին վիճակված բաժնի հայ նախարարական տոհմերի անհամար քաջ մարդկանց նահատակությունները Սուրբ Եկեղեցու ուխտի համար: Մյուս կեսի կողմից կապանքների ու բանտերի երկարաժամկետ համբերելը հանուն երկնավոր հույսի: Աստվածընտիր քահանաների ու ճշմարիտ հովիվների՝ իրենց իսկ պարանոցներից արյուն հեղելը Քրիստոսի ընտրյալ բանավոր հոտի վրա: Նախարարների ընկերակիցներից և այլ ազատ մարդկանցից ոմանց հրաժարվելը սուրբ ուխտից և լուցկի դառնալը հավիտենական այն անշեջ հրին, որ պատրաստել են Սատանան ու նրա արբանյակները: Եվ գրելով այս ամենը՝ մինչև հայոց մեծ զորավար ու մարզպան Վահան տեր Մամիկոնյանի Հայոց մարզպանության առաջին օրը՝ նույն տեղում էլ պետք է ավարտեմ այս պատմության խոսքը:*

***Գլ. Բ.** Հայոց առաջին պատմագիրների մատյանների բաղում ճառերը կարդացի, երկար ընթերցելով նրանցում գտա Հայոց աշխարհի անցյալ ժամանակների ու դարերի բազմատեսակ փոփոխություններն՝ ստույգ ու անսխալ շարադրված Առաջին գրքի մեջ, որ հարմարապես պատմելով՝ մեզ ծանոթացրեց երանելի Ագաթանգեղոսը՝*

այրն այն կատարյալ գիտությամբ և լի ամենայն փորձով, ճառերի կարգավորության մեջ ճշմարտախոս և իր պատմությունները վայելչորեն հյուսող: Սա ստուգապես հարմարեցնելով շարադրեց Արշակունի թագավորության տկարանալն ու Սասանի որդի Արտաշիր Ստահրացու զորանալը, Խոսրովի[4] քինախնդրությունն ու գոռոզացած Ստահրացու տարակուսանքները, Խոսրովի մահվան հնարքը գտնողի խորհուրդն ու խոստումները, Անակի խորամանկ խորհրդածությունն ու նույն Խոսրովին նենգ խաբեությամբ սպանելը, և ապա Հայոց աշխարհն օտար թագավորության ձեռք մատնելը, Խոսրովի որդիներին փրկելու նպատակով օտար երկիր փախցնելը դայակների կողմից, Տրդատի վերստին դառնալը հսկայի պես և հաղթական պատերազմով նախնյաց թագավորությունը քաջաբար նվաճելը, Սուրբ Գրիգորի՝ նրան դիմելը կամավոր ծառայելու ցանկությամբ, նույն Սրբի նահատակությունը, և թե նա ինչպե՛ս տարավ անպատմելի ու բազմաթիվ չարչարանքները, Քրիստոսի առավելագույն օգնակություն՛նը, որ երևաց Սրբի վրա՝ ի հիացումն դեռևս մոլորյալ մարդկանց, այնքան տարիների ընթացքին Վիրապում դիմանալը համաձայն կանխագետ տնօրինության Բարձրյալի, որը նահատակին պահում էր հայերին ծառայելու համար: Սուրբ կույսերի գալը Հռովմայեցոց քաղաքից և մարտիրոսական արյան հեղումը Վաղարշապատ քաղաքում՝ մարդկանց չորացած դիակները ոռոգելու և դալարեցնելու համար: Սուրբ Գրիգորի Խոր Վիրապից ելնելը և Հայաստան աշխարհն անգիտության խավարից դեպի աստվածային արքայության լույսն առաջնորդելը: Այնուհետև հորդումը Հայոց աշխարհի կենաց վարդապետության: Լույսի մկրտության կտակը, որ Փրկիչ Քրիստոսը մեծ նահատակ Գրիգորի ձեռքով և սուրբ կույսերի բարեխոսությամբ ծավալեց-տարածեց մեր աշխարհում: Եկեղեցիների շինարարությո՛ւնը, քահանաների պայծառությո՛ւնը, ժողովրդական բազմամբոխ խմբե՛րը Փրկչին և սրբերի հիշատակներին նվիրված տոների ժամանակ: Այս ամենը և սրանցից էլ ավելի տեղեկություններ իր հիմնավոր ու անսխալ շարադրանքով մեզ է պատմել աստծո երանելի այր սուրբ Ագաթանգեղոսը:

**Գլ. Գ.** Իսկ սրա հետ Հայոց աշխարհին պատահած դեպքերի ու ժամանակների փոփոխության պատճառով, մեկ խաղաղության և մեկ էլ սաստիկ ու չընդմիջվող չփոթությունների, միմյանց հետ միաբան չլինելու և երկպառակությամբ միմյանցից բաժանվելու պատճառով՝ ոմանք, ըստ աստվածային հրամանի, հնազանդ էին մնում իրենց Արշակունի թագավորներին, և ուրիշները հոժարակամ ծառայում էին

*օտար թագավորներին՝ կորստյան տանելով մարդկանց ու մեր աշխարհը: Կային այնպիսիները, որ միաբանության մեջ էին տեսնում Աստծո օգնությունը մարդկանց ու աշխարհիս, իսկ քակտելու և պառակտության մեջ՝ մեր մարդկանց ու աշխարհի վնասներն ու կորուստները:*

*Այս երկրորդ գրքի պատմագիրն են համարում Փավստոս Բուզանդացի կոչված մեկին: Եվ քանի որ ոմանք նրա շարադրանքի որոշ տեղերում ինչ-ինչ խոսքեր կարծում էին ո՛չ այնպես հարմար ու ճշգրիտ, ինչպես Ագաթանգեղոսի ճշտախոսությունն է Առաջին գրքում, երկմտությամբ հարկադրված էին Բուզանդացու շարադրանքը համարել անպատշաճ:*

*Այս Բյուզանդիոսը Թրակացոց սահմանակից մի փոքրիկ քաղաք էր՝ շատ վաղուց կառուցված:*

*Եվ ինքը՝ [Կոստանդիանոս] թագավորը, գալով վերոհիշյալ քաղաքիկը, որ կոչվում էր Բյուզանդիոս, տեսավ տեղի ամրությունն ու գեղեցկությունը: Եվ թեպետ ծանրագույն ու շատ աշխատանք էր պահանջվում, նա կղզու օգտակարության պատճառով ոչինչ չխնայեց: Շտապ գործի ձեռնարկելով՝ թագավորը հրաման տվեց հարթելու բարձրաբերձ բլուրները, որ կղզու ներսում էին, և կառուցած-ավարտած քաղաքը կոչեց իր անվամբ՝ Կոստանդնուպոլիս, որ հայերեն կթարգմանվի Կոստանդիանոսի քաղաք: Իսկ վաղուց կառուցված Բյուզանդիոսը նոր քաղաքի եզրին մի թաղ է, որ մինչև այսօր էլ նույն անվամբ կոչվում է Բյուզանդիոս: Եվ այսքանից հետո գիտության վտակները հորդացած բխում են այս քաղաքից՝ իբրև թագավորանիստ վայրից, ինչպես նաև Հունաց աշխարհի բոլոր կողմերից քաջ ուսյալներն այնտեղ են շտապում առաջադիմելու համար, և մինչև այսօր առավել հորդանալով՝ նրա իմաստության վտակները տարածվում են դեպի ամեն կողմ:*

*Արդ, այսպիսի քաղաքում և այնքան ուսյալ բազմության մեջ վարժված այր Փավստոսն արդյո՞ք լսողներին անհաճո բաներ կշարադրեր իր Պատմության մեջ: Ո՛չ, այդ չի՛ կարող պատահել: Ուստի ես՝ տկարամիտս, այդ գործն անհավատալի կարծելով, ասում եմ՝ գուցե թե հանդուգն ու անկիրթ մեկը լրբաբար իր ձեռքը վերցնելով՝ գրեց, ինչ որ կամենում էր: Կամ էլ պատշաճին անընդունակ մեկը փոփոխելով փչացրեց և իր հանդգնության սխալները փորձեց ծածկել Փավստոսի անունով: Դա պարզ երևում է բոլոր դիտողներին, որովհետև ոմանք Հունաստանում, առավել ևս Ասորիքում՝ գաղտագողի դիմում էին այդպիսի անամոթության. տգետ ու հանդուգն մար-*

*դիկ իրենք գրում էին դատարկ ու անպիտան ճառեր և իրար խառնելով դնում գիտունների գրքերի մեջ: Հասկացողները հեշտությամբ իրարից կտարբերեն գիտունների խոսքերն ու անմիտների չաղակրատությունները:*

*Գլ. Դ. Արթնամիտ խորհրդականությամբ լեցուն, քաջ ու ամենագետ այր Մամիկոնեից տեր Վահանը, Հայոց զորավարն ու մարզպանը, որ անձամբ եղավ Հայոց աշխարհի բազում և անհամար գործերի ուղղություն տվողն իր իշխանության օրերում, ուրիշներին ևս նույնն էր հորդորում: Ինչպես որ Հայաստան աշխարհի հոգսն էր քաշում մյուս բոլոր արժանավոր գործողություններով, առավել ևս հարմար ու պատշաճ համարեց այս՝ Երկրորդ գրքի պատմության մնացած տեղից[5] շարունակել և շարադրել նրանից հետո Հայոց աշխարհում կատարվածը. մեծավ զգուշությամբ գրել ու մեկ առ մեկ դասավորել բոլոր հոգևորականների առաքինությունները և քաջ տղամարդկանց սխրանքները: Որպեսզի ժողովրդական բազմությունները, հոգևորականների բարի վարքերը լսելով, ցանկանան նմանվող լինել նրանց ճգնություններին, և խիզախներն էլ, լսելով առաջներում գործված քաջությունների մասին, բազմապատկեն իրենց անձնական սխրանքները, իրենցից հետո թողնեն անվանի հիշատակ՝ իրենց անձերի ու ազգի համար, իսկ ծույլերն ու վատերը, անձամբ տեսնելով այս ամենը և լսելով այլոց պարսավանքները, բարի նախանձից կրթվելով՝ ջանան լավանալ:*

*Եվ այս օրինակից զգուշացնելով, ստիպում է մեզ Մամիկոնեից տեր Վահանը՝ Հայոց զորավարն ու մարզպանը, որի հրամանը հասավ ինձ՝ Փարպեցի Ղազարիս: Նա (Վահան Մամիկոնյանը) դաստիարակվել և ուսում է առել առաքինակրոն և երանելի Աղանի մոտ, որը հռչակելի ու ականավոր Արծրունյաց տոհմից էր՝ որդին Տաճատի ու Գոտորզի եղբայր Վասակի:*

*... Եվ ահա այսպես Մամիկոնեից տեր Վահանը՝ սպարապետն ու մարզպանը Հայոց, հարկադրաբար ստիպեց մեզ ձեռնարկել մի գործ, որ վեր է, քան մեր գիտության ուժը:*

*1. **Ստահր** – քաղաք Պարսկաստանում, որտեղից սերվել են Սասանյանները:*

*2. Խոսքը պարթև Արշակունիների արքայատան վերջին ներկայացուցիչ Արտավան V-ի (223-227) մասին է:*

*3. Այսինքն՝ Արշակ III-ի (378-387):*

*4. Ակնարկում է Հայոց Խոսրով II Արշակունի թագավորին (279-287):*

*5. Այսինքն՝ Հայաստանի առաջին բաժանումից (387 թվական):*

## ՍԱՀԱԿ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ՊԱՏՎԻՐԱՏՈՒ ԵՎ ՀՈՎԱՆԱՎՈՐ

*ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻ*

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

### *Գիրք Ա*

### *Գլ. Ա. ՍԱՀԱԿԻ ԹՂԹԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ ԵՎ ՆՐԱ ԽՆԴՐԱԾԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ԽՈՍՏՈՒՄԸ*

*Մովսես Խորենացին մեր ազգի պատմության այս սկզբում ողջունում է Սահակ Բագրատունուն[1]:*

*Քո մեջ եղած աստվածային շնորհքների անսպառ գործունեությունը և Հոգու անդադար շարժումները քո մտածողության վրա՝ ես ճանաչեցի այս գեղեցիկ խնդրի միջոցով, մարմնիցդ առաջ Հոգուդ հետ ծանոթանալով. սա իմ ճաշակին ևս ախորժելի է, և մանավանդ իմ սովորություններին: Ուստի ոչ միայն պետք է քեզ գովել, այլև քեզ համար աղոթել, որ միշտ այդպես մնաս:*

*Որովհետև, եթե մենք բանականության պատճառով, ինչպես ասում է, Աստծու պատկերն ենք, և մյուս կողմից՝ բանականի կատարելությունը խոհականությունն է, և քո մեջ անհատնելի է սրանց ցանկությունը՝ ուրեմն գեղեցիկ մտածողությամբ վառ և բորբոք պահելով քո խոհականության կայծը՝ զարդարում ես բանականությունը, որով մնում ես օրինակ լինելու: Կարելի է ասել, որ սրա միջոցով ուրախացնում ես սրա սկզբնատիպին՝ գեղեցիկ և չափավոր մոլությամբ հետամուտ լինելով այս խնդիրներին:*

*Սրա հետ միասին և այս եմ նկատում, որ եթե մեզանից առաջ և մեր ժամանակ ապրող՝ Հայոց աշխարհի ցեղապետներն ու իշխանները ո՛չ իրենց ձեռքի տակ ընկած և հավանորեն եղած իմաստուններին հրամայեցին այսպիսի պատմական հիշատակարաններ գրել, ոչ էլ մտածեցին դրսից որևէ տեղից ներս բերել օժանդակ գիտություններ, և այժմ քեզ այդպիսին եղած ճանաչեցինք. ուրեմն պարզ է, որ դու պետք է ճանաչվես բոլոր քեզանից առաջ եղածներից վեհագույն և բարձրագույն, արժանանաս գովեստների և պատմական այսպիսի հիշատակարանի մեջ գրվելու արժանի:*

*Ուստի ուրախությամբ ընդունելով քո խնդիրը՝ սիրով կաշխատեմ այն կատարել: Անմահ հիշատակ թողնելով այս քեզ և քեզ հաջորդող սերունդներին: Որովհետև դու պատկանում ես նախնական և քաջ ազգի, արդյունավոր ոչ միայն խոսքի և պիտանի խոհականության*



***Մովսես Խորենացի և Սահակ Բագրատունի***
***(Հատված «Պատմագրքից». 1567 թ.)***

*մեջ, այլ բազմաթիվ մեծամեծ փառավոր գործերով, որոնք մենք կհիշատակենք այս պատմության ընթացքում, երբ հորից որդի ծննդաբանությունը տալով՝ կազմենք բովանդակ ազգաբանությունը. իսկ հայտնի բոլոր նախարարությունների, ամեն մեկի ո՛րտեղից և ի՛նչպես ծագելը համառոտ և հավաստի կպատմենք, ինչպես որ կա մի քանի հունական պատմությունների մեջ:*

## Գլ. Գ. ՄԵՐ ԱՌԱՋԻՆ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԵՎ ԻՇԽԱՆՆԵՐԻ ԱՆԻՄԱՍՏ ԲԱՐՔԻ ՄԱՍԻՆ

*Կամենում եմ նաև առանց մեղադրական հիշատակության չթողնել մեր հին նախնիքների անիմաստասեր բարքերը, այլ հենց այստեղ, մեր ձեռնարկման սկզբում, նրանց մասին կշտամբանքի խոսքեր գրել: Որովհետև, եթե հիրավի գովության արժանի են թագավորներից*



*Երուսաղեմի Հայկական վանքի խճանկարը (V–VI դարեր)*

*նրանք, որոնք իրենց ժամանակները գրով և պատմությամբ Հաստատեցին և յուրաքանչյուրն իր իմաստության գործերն ու քաջությունն արձանագրեց պատմագրությունների և պատմությունների մեջ. նրանցից Հետո մեր կողմից գովասանական խոսքերի արժանացան նաև այն մատենագիրները, որոնք այս ծանր աշխատանքով զբաղվեցին: Սրանց շնորՀիվ մենք էլ նրանց շարադրած գրվածքները կարդալիս աշխարՀական կարգերի գիտություն ենք ձեռք բերում և քաղաքական կարգեր ենք սովորում, երբ ուսումնասիրում ենք այսպիսի գիտական ճառեր և պատմական գրվածքներ: Մեզ ամենիս Հայտնի է մեր թագավորների դեպի գիտությունն ունեցած անմտությունն ու բնական Հոգու անկատարությունը: Որովհետև* ***թեպետ մենք փոքր ածու ենք և թվով շատ սաՀմանափակ ու զորությամբ թույլ և շատ անգամ օտար թագավորությունների կողմից նվաճված, բայց և այնպես մեր երկրում էլ գրելու և Հիշատակելու արժանի շատ սխրագործություններ են կատարվել, որ նրանցից ոչ ոք Հոգ չտարավ գրի առնելու:***

*... Բայց ես շատ եմ զարմանում քո մտքի բեղմնավորության վրա, որ մեր (նախարարական) ցեղերի հներից սկսած մինչև այժմյանները միայն դու գտնվեցիր այսպիսի մեծ գործի ձեռնարկող և մեզ առաջարկեցիր հետազոտություն կատարել՝ երկար և չահավոր գործով ճշտությամբ հորինել մեր ազգի պատմությունը, թագավորների և նախարարական ցեղերի և տոհմերի մասին, թե ո՛վ ումի՛ց է ծագել, ի՛նչ է գործել նրանցից յուրաքանչյուրը, և ո՛րն այս բաժանված ցեղերից բնիկ մեր ազգից է և որո՛նք եկվորներ են և հայացած բնիկ են դարձել: Ամեն մեկի գործերն ու ժամանակները գրով դրոշմել, անկարգ աշտարակի շինությունից[2] սկսած մինչև ներկա ժամանակս[3] – նկատելով այս քեզ համար գեղեցիկ փառք և բավականություն առանց նեղության:*

*Եվ կսկսեմ նրանից, որից սկսում են և ուրիշները, ոմանք ըստ եկեղեցական պատմության[4], ոմանք էլ ըստ Քրիստոսի, ավելորդ համարելով երկրորդել արտաքին հեղինակների առասպելներն սկզբնական պատմության մասին, բայց հետագայից կհիշենք որոշ ժամանակներ և հայտնի անձեր, որքան նրանք զուգադիպում են Սուրբ Գրքի պատմությանը, մինչև որ բնականաբար, կհասնենք, հեթանոսական զրույցներին, բայց սրանցից էլ կառնենք ինչ որ հավաստի կհամարենք:*

*1. Սահակ Բագրատունին 481–484 թթ. հակապարսկական ապստամբության առաջնորդներից էր, Հայոց մարզպանը: Զոհվել է 482 թ. ամռանը Ճարմանայի ճակատամարտում: Անկասկած է, որ «Հայոց պատմության» գրության ժամանակը դրվելու է 482 թվականից առաջ:*

*2. Նկատի ունի Բաբելոնյան աշտարակաշինությունը (տե՛ս* **Ծննդոց**, *ԺԱ, 1–10):*

*3. Այսինքն՝ իր օրերը, V դարի կեսերը:*

*4. Հավանաբար նկատի ունի Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմությունը»:*

## ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻՆ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՉՈՐՐՈՐԴ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՐԾՐՈՒՆՅԱՑ ՏԱՆ

#### *Դպրություն Ա*

***Գլ. ԺԱ.*** *... Սահակի[1] հրամանով մեծ վարդապետ և տիեզերահռչակ քերթողը՝ Մովսես [Խորենացին], հրաշալի հորինվածքով գրեց Հայոց մեծերի Պատմության գիրքը, որ սկսվում է Ադամից և հասցը-*

*վում մինչև Զենոն կայսրը[2]: [Սուրբ Սահակն] ապրեց 120 տարի՝ լի ու պարարտ ծերությամբ, ինչպես գրվել և մեզ է ավանդել Մովսես Խորենացու Պատմության խոստացված չորրորդ դրվագում[3], ինչն ավելացված է երկու գլուխներին: Նույնը վկայում է նաև Մովսես [Խորենացու] ուսումնակից և Սուրբ Մեսրոպի աշակերտ երանելի Կորյունն իր գրած ստուգապատում աշխատության մեջ[4]:*

*1. Խոսքը Հայոց մարզպան Սահակ Բագրատունու մասին է:*

*2. Բյուզանդիայի Զենոն II կայսր (474-491):*

*3. Թովմա Արծրունին երկու անգամ է հիշատակում Մովսես Խորենացու Պատմության չորրորդ գրքի մասին: Բացի սույն հիշատակությունից, նա այլ կապակցությամբ գրում է. «... այդ մասին կգտնես ... Մովսես [Խորենացու] չորրորդ դպրության մեջ» (տե՛ս* ***Թովմա Արծրունի և Անանուն,*** *Պատմություն Արծրունյաց տան. Ներածությունը, թարգմանությունը և ծանոթագրությունները Վրեժ Վարդանյանի, Երևան, 1978, էջ 33): Սակայն Մովսես Խորենացու այսօր հայտնի բոլոր 35 ձեռագրերում չորրորդ գիրքը բացակայում է: Դա չի խանգարել, որ մի քանի հայագետներ ընդունեն Խորենացու Պատմության չորրորդ գրքի գոյությունը, իսկ Ա. Մաթևոսյանն անգամ հատուկ մենագրություն է նվիրել այդ խնդրին:*

*4. Տե՛ս աստ, էջ 551-552:*

## ԶՐԱԴԱՇՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՐԺՄԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՀԻՄՆԱՎՈՐՈՒՄՆ ԸՍՏ ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑՈՒ

### *ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ*

### ԵՂԾ ԱՂԱՆԴՈՑ

### ***Գիրք երկրորդ***

### ***ՊԱՐՍԻՑ ԿՐՈՆԻ ՀԵՐՔՈՒՄԸ***

### ***Ա***

*Քանի դեռ բնավ ոչինչ գոյություն չուներ,— ասում են,— ո՛չ երկինքը, ո՛չ երկիրը, ո՛չ էլ մյուս արարածները, որ երկնքում կամ երկրի վրա են, կար մեկը՝ անունով Զրվան[1], որը թարգմանվում է բախտ կամ փառք: Հազար տարի զոհ արեց նա, որպեսզի, թերևս, իրեն մի որդի լինի՝ Որմիզդ[2] անունով, որը ստեղծի երկինքը, երկիրն ու այն ամենը, ինչ որ նրանց մեջ է: Եվ հազար տարի զոհ անելուց հետո սկսեց մտածել՝ ասելով. «Որևէ օգուտ կա՞, որ այս զոհն անում եմ, կունենա՞մ Որմիզդ որդի, թե իզուր եմ ջանում»: Եվ մինչ նա այսպես մտածում էր, Որմիզդն ու Արհմնը[3] սաղմնավորվեցին իրենց հոր*




***Եզնիկ Կողբացի***
*(Հատված ձեռագիր ժողովածուից. **XIV** դար)*

*արգանդում[4], Որմիզդը՝ այն զոհ մատուցելուց, իսկ Արհմնը՝ երկմտելուց: Ապա Զրվանն իմանալով ասում է՝ «Երկու որդիներ կան որովայնում. նրանցից ով որ շուտ հասնի ինձ մոտ, նրան թագավոր կդարձնեմ»: Եվ Որմիզդն, իմանալով հոր մտադրությունը, հայտնեց Արհմնին՝ ասելով. «Մեր հայր Զրվանը մտածեց, թե մեզանից ով շուտ գնա իր մոտ, նրան թագավոր կդարձնի»: Արհմնը, այդ լսելով, ծակեց որովայնը և ելավ-կանգնեց հոր առաջ: Նրան տեսնելով՝ Զրվանը չիմացավ, թե ո՛վ է, ուստի հարցրեց՝ «Ո՞վ ես դու»: Իսկ նա պատասխանեց՝ «Ես քո որդին եմ»: Զրվանը նրան ասաց՝ «Իմ որդին անուշահոտ ու լուսավոր է, իսկ դու խավար ու գարշահոտ ես»: Մինչ նրանք միմյանց հետ այսպես խոսում էին, իր ժամին Որմիզդը ծնվեց լուսավոր ու անուշահոտ, եկավ-կանգնեց Զրվանի առաջ: Եվ Զրվանը, տեսնելով նրան, իմացավ, թե իր որդի Որմիզդն է, որի համար զոհ էր անում: Եվ վերցնելով բարսմունքը[5], որ բռնում էր իր ձեռքում ու նրանով զոհ անում, տվեց Որմիզդին և ասաց՝ «Մինչ այժմ ես էի քեզ համար զոհ անում, այսուհետև դու պիտի անես ինձ համար»: Եվ երբ Զրվանը բարսմունքը տվեց Որմիզդին ու օրհնեց նրան, Արհմնը մոտեցավ Զրվանին ու նրան ասաց՝ «Այնպես չուխտեցի՞ր, թե քո երկու որդիներից ով որ շուտ հասնի քեզ մոտ, նրան թագավոր կդարձնես»: Իսկ Զրվանը պայմանը չդրժելու համար Արհմնին ասաց՝ «Ա՜յ խաբեբա ու չարագործ, թող քեզ տրվի ինը հազար տարվա թագավորություն, Որմիզդին էլ քեզ վրա արքա նշանակած լինեմ, իսկ ինը հազար տարուց հետո Որմիզդը թագավորի և ինչ ցանկանա անել՝ անի»: Այն ժամանակ Որմիզդն ու Արհմնը սկսեցին արարածներ ստեղծել: Եվ այն ամենն, ինչ Որմիզդն էր ստեղծում, բարի էր և ուղիղ, իսկ ինչ որ Արհմնն էր ստեղծում, չար էր ու ծուռ:*

## Բ

*Այսպիսի անհավատալի և տխմարների մտքով կցմցված ցնդաբանություններին բոլորովին էլ պետք չէր պատասխան տալ, որովհետև բավական էր նրանց անմտությունը ցուցադրել հենց իրենց այն ասածներով, որոնք միմյանց հակամարտ են ու հակասական: Բայց որովհետև այս կերպ քեչի[6] առաջնորդները մեծարված կերևային իրենց ենթարկվողներին և խիստ նեղելով՝ խորխորատ կգցեին սրանց, (ուստի) անհրաժեշտ է պատասխանել ու ցույց տալ, որ ոչինչ ավելի չեն ասում, քան Մանին[7] (ասաց), որին իրենք մորթազերծ արեցին: Որովհետև նա (Մանին) երկու՝ բարու ու չարի նախասկիզբ է ընդունում և այն էլ ոչ թե հղիությամբ ու ծնունդով, այլ՝ ինքնակա և միմյանց հակառակ, նրանք էլ նույնն են ասում՝ Զրվանի տենչանքով, (բայց) հղիությամբ ու ծնունդով: Եվ եթե երկուսն էլ նույն կրոնն ունեն, մոգերը զանդիկներին[8] ինչո՞ւ են ատում, եթե ոչ նրա համար, որ վարքով են միմյանցից տարբեր, թեպետ ձևականորեն և ոչ իսկությամբ: Սակայն կրոնով երկուսն էլ մեկ են, նրանք երկարմատյաններ են[9], սրանք նույնպես. նրանք արևապաշտներ են, սրանք՝ արեգակի ծառաներ. նրանք կարծում են, թե բոլոր անշունչները շունչ ունեն, սրանք էլ նույն ձևով (նույնն) են հասկանում:*

*Բայց քանի որ Մանին կամեցավ նրանցից,– և ոչ միայն նրանցից, այլև բոլոր աղանդները (դավանողներից),– բարձր վարք ցույց տալ կեղծավորությամբ, իբր թե միանգամայն զերծ է ցանկասիրական կրքերից, ուստի աղջիկներին ձեռնահարելու մեջ մեղադրվեց և մորթազերծմամբ մեռավ: Այսպիսով պարզ է, որ (մանիքեականներն ու զրվանականները) միայն վարքով են միմյանցից տարբերվում: Թեև նրանք կեղծող են, և սրանք՝ զեղխ ու բացահայտորեն փափկասեր, սակայն կրոնով նույնն են:*

## Գ

*Այժմ մենք, թողնելով նրանց (մանիքեականներին), հարցնենք սրանց (մոգերին)՝ Զրվանը, որին ամեն ինչից առաջ են համարում, կատարյա՞լ մեկն էր, թե՞ անկատար: Եթե ասեն, որ կատարյալ էր, կլսեն, թե կատարյալն ումի՞ց կարիք կունենար խնդրելու որդի, որը գար և երկինքն ու երկիրը ստեղծեր. քանի որ եթե կատարյալ լիներ, հենց ինքը կարող էր ստեղծել երկինքն ու երկիրը: Իսկ եթե անկատար էր, պարզ է, որ նրանից վեր կար մեկը, որը կարող էր նրա թերակատարությունը լրացնել: Եվ եթե իրենից վեր մեկը կար, նա պիտի*

*ստեղծեր երկինքն ու երկիրը և այն ամենը, ինչ որ նրանց մեջ են՝ իր բարերարությունն ու զորությունը ցույց տալու համար, և ոչ թե Զրվանին որդի շնորհեր, որը երկինքն ու երկիրը և նրանց մեջ եղող ամեն ինչ ստեղծեր:*

*«Բայց,– ասում են,– փառքի համար էր զոհ անում»:*

*Հարցնենք՝ փառքը մեկի կողմի՞ց էր շնորհված. նրան, թե՞ (ինքը) մշտնջենական լինելու պատճառով էր փառավոր: Եթե փառքը մեկի կողմից էր պարգևված նրան, պետք է կարծել, որ կար մեկը նրանից վեր՝ ավելի հզոր ու ավելի փառավոր, որից փառքը հասավ նրան: Իսկ եթե նրանից վեր մեկը չկար, հազարամյա զոհ անելն իզուր էր. որովհետև փառքը գոյավոր բան չէ, այլ մեկի հաջողությունից է փառք կոչվում, ինչպես որ մեկի անհաջողությունից էլ թշվառությունն է անվանվում: Երկուսն էլ դեպքերի արգասիք են և ոչ թե հաստատ գոյակներ:*

*Մի բան ևս: Եթե դեռ ստեղծված չէին արեգակը և լուսինը, որոնցով ժամերն ու օրերը, ամիսներն ու տարիներն են որոշվում, հազար տարին որտեղի՞ց էր երևում: Քանի որ մեջտեղում չկային լուսատուները, որոնք օրերի, ամիսների ու տարիների թիվը պիտի ցույց տային ուրեմն պարզ է, որ անմտությամբ լի են այն չաղակրատանքները:*

*Դարձյալ՝ եթե չկային երկինքը, երկիրը և ինչ որ նրանց մեջ է, որտե՞ղ կամ ինչո՞վ էր զոհ անում (Զրվանը): Երբ չկար երկիրը, ոչ էլ նրանից (բուսնող) տունկերը, բարսմունքը որտեղի՞ց էր գտնում՝ իր ձեռքում բռնելու. կամ թե ի՞նչ էր զոհում, քանի որ անասունները դեռ ստեղծված չէին: Եվ որը ամենից անմիտ բանն է, «Հազար տարի,– ասում են,– զոհ արեց. և հազար տարուց հետո երկմտեց՝ ասելով. «Կլինի՞ ինձ Որմիզդ որդի. եթե չլինի, իզուր տեղը պիտի չարչարվեմ»: Եվ դա ցույց է տալիս, որ Զրվանը տկար, կարիքավոր ու տգետ էր. չարիքների պատճառն էլ նույն ինքն է և ոչ թե Արհմնը: Որովհետև եթե նա երկմտած չլիներ, ինչպես ասում են նրանք, չէր լինի Արհմնը, որին չարիքների արարիչ են հոչակում իրենք: Բայց ինքը երկմտեց, որն անհավատալի և լիապես անկարգ բան է:*

*Քանի որ մեկ աղբյուրից երբեք երկու տեսակ ջուր չի բխում՝ մեկն անույշ, մյուսը՝ դառը, ոչ էլ մեկ ծառից երկու տեսակ պտուղներ (են լինում)՝ մեկը քաղցր, մյուսը՝ դառը, ուստի եթե Զրվանին ընդունում են քաղցր, չպետք է դառը պտուղը՝ Արհմնին, նրանից (ծնված) համարեն, իսկ եթե դառն են հաշվում, պատշաճ չէ, որ քաղցր պտուղը՝ Որմիզդին, նրանից (սերված) կարծեն: Եվ նրանց համար հարմար է գալիս աստվածային խոսքը, թե՝ «Կամ արե՛ք ծառը քաղցր ու նրա*

*պտուղը՝ քաղցր և կամ արե՛ք ծառը դառը ու նրա պտուղը դառը, որովհետև ծառից է իր պտուղը ճանաչվում»*[10]*:*

*Եվ եթե արարածները մնում են յուրաքանչյուրն իրենց հորինվածքում ու երբեք դուրս չեն գալիս իրենց համար գրված սահմաններից, (ապա) առավել ևս Զրվանը, եթե որ մչտնջենավոր մեկն էր ու արարածներ ստեղծելու հնարներ էր որոնում՝ թե՛ անձամբ, թե՛ իր որդու կամ մի ուրիշի միջոցով, ինչպես ասում են, պարտավոր էր կարգ ու կանոն ցույց տալ և ոչ թե անկարգություն:*

*Որովհետև երբեք չտեսանք, որ կովերը էշեր ծնեին, էշերը՝ եղներ, ոչ էլ գայլերը՝ մաքիներ, մաքիները՝ աղվեսներ, աղյուծները՝ ձիեր, ձիերը՝ օձեր. սակայն մի ծնունդ կա միայն, որը մարդիկ բնության օրենքներից դուրս հնարեցին՝ ձիերից ու էշերից ջորիներ ծնեցնելը: Նրանք էլ անսերմ ու անծնունդ են, քանի որ ոչ թե Աստծուց են ստեղծվել, այլ մարդկանց հնարամտությունից (են առաջ գալիս): Այսպիսով՝ եթե Զրվանը տավար էր, կարիճ Արհմնին ինչպե՞ս էր ծնում, և եթե գայլ էր, գառ Որմիզդին ինչպե՞ս ծնեց. չէ՞ որ մարդկանց մտքի ցնդաբանություններ են (դրանք):*

*Քանի որ Զրվանը ևս մարդ է եղել, մի քաջ տղամարդ՝ տիտանների օրոք, և հույները, արիներն ու բոլոր հեթանոս ժողովուրդներն էլ սովոր են քաջերին դյուցազուններ համարել, (ուստի) պարսից կրոնը կցմցողը տեսնելով, որ իր երկրի մարդիկ (նույն ձևով) նրան (Զրվանին) աստված են համարում, (ասում է՝) «Ես պիտի կարծել տամ, որ երկնքի, երկրի ու բոլոր արարածների ստեղծումը նրանից է»:*

*Խոսքիս ճշմարիտ լինելը նրանից է երևում, որ Զրվանը (կցմցողը) ըստ մարդկային բարքերի է հարմարեցնում քեչը և հղիության ու ծննդյան (հիմունքով) է կցմցում իր ուսմունքը: Որովհետև նախ ազդարարում է, թե բարի և չար երկու արարիչները մեկ հոր ծնունդներ են, և ապա մեջտեղ է բերում այն, թե մոր ու քրոջ (հետ ունեցած) սեռական գործողություններով են ստեղծվել լուսատուները: Եվ դա՝ ոչ թե ուրիշ բանի, այլ մարմնասիրության ու ցանկասիրության պատճառով: Որովհետև տեսնելով, որ արիական ցեղը իգասեր էր, նրա նույն մեղկ բարքին համապատասխան նրա համար կրոն կցմցեց, որպեսզի իրենց աստվածների մասին լսելով, թե անվայել խառնակեցությունների են հետամուտ եղել, իրենք էլ, նրանց նմանվելով, նույն անառակություններն անեն անխտիր, իսկ դրանից հեռու է և վեր է մնում աստվածայինը: Որովհետև Աստծուն պատշաճ է որդի ունենալ ոչ թե ամուսնությամբ, այլ հավիտենականությամբ, ինչպես որ մտքին (հատուկ առաջ բերել) խոսքը, աղբյուրին՝ գետը, կրակին՝*

*տաքությունը, արեգակին՝ լուսավորությունը, ուստի այնպես չէ, ինչպես նրանք են հանդգնում ասել, թե փափագում էր, որ մի որդի ծնվեր իրեն, որի անունը Որմիզդ լիներ:*

*Մ հիմարություն. դեռ մեջտեղը որդի չկար, և նա չսաղմնավորվածին ու չծնվածին անուն էր դնում: Բոլոր ծնունդներին անուններ են դրվում ծնվելուց հետո, իսկ նա (Զրվանը) ծնվելուց առաջ ինչպե՞ս էր նրան Որմիզդ անունը դնում: Բայց (գուցե ասեն), թե հավատում էր, որ խսկապես իրեն որդի է ծնվելու: Իսկ եթե հավատում էր, ինչո՞ւ երկմտեց և իր երկմտանքով պատճառ դարձավ Արհմնի ծննդյան, որով չարիքներն աշխարհ մտան: Եվ զարմանալին այն է, որ մեկը հազարամյա զոհաբերությամբ հազիվ ծնվեց, իսկ մյուսը հենց նոր երկմտելուց (ծնվեց):*

*Դարձյալ՝ նա, որ իմացավ, թե որովայնում երկու որդիներ կան, ինչո՞ւ այն էլ չիմացավ, որ մեկը բարի է, իսկ մյուսը՝ չար: Եվ եթե իմացավ, բայց չոչնչացրեց չարին, (ուրեմն) ինքն է չարի պատճառը: Իսկ եթե այն չիմացավ, ինչպե՞ս կարելի է հավատալ, թե մյուսին ճանաչեց: Եվ եթե այն ժամանակ չիմացավ, (իսկ հետո), երբ տեսավ նրան խավարին ու գարշահոտ, արդյոք այդ ժամանակ է՞լ չիմացավ: Սակայն և՛ իմացավ, և՛ տեսավ, և՛ թագավոր դարձրեց խավարայինին. (ուստի) ինքն է չարիքների պատճառը, որովհետև չոչնչացրեց չարին և դեռ թագավորություն էլ տվեց նրան ինը հազար տարով: Եվ ո՞ւմ վրա թագավորեցրեց նրան (Արհմնին), եթե ոչ Որմիզդի կողմից ստեղծված բարի արարածների վրա, որպեսզի նրանց չարչարի՝ խառնելով նրանց հետ իր չար արարածներին:*

*«Սակայն,– ասում են,– Որմիզդին էլ թագավորեցրեց նրա վրա»:*

*Եթե Որմիզդը նրա թագավորը լիներ, ինչպե՞ս թույլ կտար, որ նա (Արհմնը) իր բարի արարածներին չարչարեր: Եթե հայրը որդու արարածներին չխնայեց՝ չարի ձեռքը տալով (նրանց), որդին իր արարածների նկատմամբ, ինչո՞ւ չպիտի հոգ տաներ. անկարողությա՞ն, թե՞ չարակամության պատճառով: Եթե անկարողության պատճառով վտանգից ազատ չի պահում, ապա նա ո՛չ այժմ է թագավորում, ո՛չ էլ հետո, ինչպես ասում են, կարող է հաղթել: Իսկ եթե չարակամության պատճառով է, դուրս է գալիս, որ չարիքների համար պատասխանատու է ոչ միայն հայրը, որ թագավորեցրեց չարին, այլև՝ որդին, որ համախոհ եղավ հորը և քաջալերող՝ չարին:*

*Դարձյալ՝ թե որ թագավորությունը հանձնեց որդիներին՝ մեկին ինը հազար տարով, մյուսին՝ հավիտենապես, (ապա) ինքը ո՞ր կարգում պիտի մնար: Չէ՞ որ երբ դեռ ոչինչ չկար, չկար նաև որևէ բանի*

*թագավոր, որովհետև որևէ բանի արարիչ էլ չկար: Իսկ երբ որդիները ծնվեցին, դարձան արարիչներ, մեկը բարիների, մյուսը՝ չարերի: Հենց նրանք էլ թագավորներ եղան, մեկը ժամանակավոր, մյուսը՝ հավիտենական: Այսպիսով, Զրվանը արարչությունից ու թագավորությունից դատարկ մնաց. և արարիչ չէ, որովհետև ինքը չի ստեղծել, թագավոր էլ չեղավ, որովհետև ո՞ւմ արարածներին պիտի թագավոր լիներ: Ուրեմն պարզ է, որ Զրվանը երբեք գոյություն չի ունեցել և չկա: Որովհետև այն, որ գոյություն ունի, կա՛մ արարիչ է, կա՛մ արարած: Եվ քանի որ սա (Զրվանը) ո՛չ արարիչ է, ո՛չ էլ արարած, (հետևաբար) երբեք էլ աստված չի եղել, չկա ու չի էլ լինի:*

**Դ**

*«Սակայն,– ասում են,– երբ Զրվանն իր մեջ մտածեց, թե՝ «իմ որդիներից ով շուտ ինձ մոտ հասնի, նրան թագավոր կդարձնեմ», Որմիզդն իմացավ ու այդ միտքը հայտնեց Արհմնին»:*

*Եթե Որմիզդը հոր միտքն իմացավ, (ապա) ինչո՞ւ չիմացավ չար եղբոր մտադրությունն էլ, թե ծակելու է որովայնն ու դուրս է գալու, նա առաջինն է գնալու և ստանալու թագավորությունը, որը ողբերգական էր լինելու իր և իր արարածների համար, որովհետև հենց սկզբում ետ մղելով՝ նա պիտի թուլացներ իրեն, և ապա (ինքը) ինը հազար տարի պիտի զղջար ու ցավեր, որ նա ծուռ է նայում իր բարի արարծներին, պղծում ու պլակերպում է նրանց: Կամ Զրվանն էլ, որ իմացավ երկու որդիների սաղմնավորվելը որովայնում, ինչո՞ւ չճանաչեց Արհմնին, երբ սա եկավ-կանգնեց իր առաջ:*

*Դարձյալ՝ նա, որ գիտեր, թե իր Որմիզդ որդին անուշահոտ և լուսավոր էր՝ հենց որովայնում գտնվելու ժամանակից, ինչպե՞ս չիմացավ, որ մյուս որդին գարշահոտ և խավարին է: Մի՞թե պարզ չէ, որ նրանց կողմից*[11] *պատմվում են ոչ թե հավաստի բաներ՝ այլ՝ կցմցված առասպելներ:*

*Եվ մյուս՝ ամենից անհավատալի բանն էլ այն է, որ մեկը հազարամյա զոհաբերությամբ հազիվ ծնվեց, իսկ մյուսը երկմտելուց անմիջապես հետո (ծնվեց): Եվ եթե Արհմն որդին այն երկմտելուց ծնվեց, (Զրվանը) նրան չպիտի կոչեր իր որդին, որովհետև եթե իր որդին լիներ, հար և նման պիտի լիներ իրեն՝ կա՛մ բարի, եթե (ինքը) բարի էր, կամ թե չար, եթե (ինքը) չար էր: Մի՞թե Զրվան հայրը միաժամանակ և՛ բարի էր, և՛ չար, ու նրա բարի երակից բարի որդին ծնվեց, չար երակից՝ չարը: Եվ եթե այնպես չէր, ապա նա չարին չէր կոչի իր որդին, ոչ էլ թագավորություն կտար նրան: Իսկ եթե բարի*

*էր ինքը, չարին կոչնչացներ ու Թագավորությունը կտար բարուն, որով ինքը մեծանուն կդառնար և իր բարի որդի Որմիզդին մշտապես չէր նեղացնի: Սակայն այս բոլորից պարզ է, որ երբեք չի եղել Զրվանը աստվածների Հայր, ոչ էլ Թագավորություններ տվող:*

*1. **Զրվան** – Հին պարսկական դիցարանի գերագույն աստվածը:*

*2. **Որմիզդ** – Զրվանի որդին, Հին պարսկական դիցարանի գլխավոր աստվածներից:*

*3. **Արհմն** (Ահրիման) – Հին պարսկական դիցարանում չարության աստված:*

*4. Պետք է լինի՝ «Հոր արգանդում»:*

*5. Բառացի Թարգմանությամբ նշանակում է ճյուղերի, ճիպոտների կապոց, որ մոգերը զոհ մատուցելիս բռնում էին իրենց ձեռքում:*

*6. **Քեշ** – Հին պարսկական կրոնի անվանումը:*

*7. **Մանի** (216-277) – Հին Պարսկաստանում կրոնական ուսմունքի Հիմնադիր (տե՛ս ստ, էջ 448, ծան. 27):*

*8. **Զանդիկներ** – բառացիորեն նշանակում է Մանիի ուսմունքի Հետևորդներ: Տվյալ դեպքում գործածվել է Հերետիկոս իմաստով:*

*9. Այսինքն՝ դուալիստական են:*

*10. Տե՛ս **Մատթ.**, ԺԲ, 33, Հմմտ. Է, 17-19:*

*11. Այսինքն՝ զրվանականների կողմից:*

## *ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑՈՒ ԽՐԱՏՆԵՐԸ*

### ԵՂԾ ԱՂԱՆԴՈՑ

### ***ՆՈՒՅՆ ԵԶՆԻԿ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԽՐԱՏՆԵՐԸ***

*Աստվածասերը պիտի զգուշանա իր կամքից՝ որպես Թշնամուց:*

*Լավ է մաքուր մտքով քնել, քան պիղծ մտքով աղոթել, և վարձատրություն չստանալ ու իզուր չարչարվել:*

*Մարմինդ կոփի՛ր նեղությամբ և սիրտդ՝ Աստծու երկյուղով, որ չվախենաս սատանայի մաՀաբեր նետերից:*

*Սերն ու երկյուղը քեզ բնավորություն դարձրու, որ խաբեությամբ չտանջվես:*

*Ով գարնանն ու ամռանը Հանգիստ է մնում, ձմռանը սովից ու սառնամանիքներից սատկում է:*

*Հնազանդվի՛ր սիրով, աղոթի՛ր Հույսով, աշխատի՛ր Հավատով և երկնային Հարսանիքում կպայծառանաս:*

*Աստված ինչ շնորհներ որ տալիս է քեզ, կարիքավորների պետքերի համար ծառայեցրու, որ շնորհներն աղբյուրի պես առատանան, և դու փառավորվես:*

*Կեղծավոր կրոնավորը սատանայի քող է, իր տակ պահելով սատանային՝ մարմնի աղտեղությունն է ծածկում և նկարատեսք դիմակներով խաբում է տեսնողներին: Սրանք գայլեր են գառան մորթով, որոնց Քրիստոսն սպառնաց անհավատների հետ դատել:*

*Մեր բերանները հոտել են պաս պահելուց, լեզուներս անզգայացել սաղմոսերգությունից, իսկ Աստծու պահանջածը՝ սերն ու խոնարհությունը, չունենք. շրթունքներով ենք սիրում Աստծուն և իզուր չարչարվում:*

*Անասունի միսը չեն ուտում, բայց եղբորն անհագաբար են ուտում. գինի չեն խմում, իսկ հոգին շաղախում են արյամբ, ամուսնացածներին ատում են, բայց պիղծ մտքով չարունակ պոռնկանում են, անպետք զգեստ են հագնում, բայց ագահությունից այրվում են, այնպիսիներից պետք է փախչել և առնչություն չունենալ (նրանց հետ):*

*Շատ մանկահասակ կրոնավորին մի՛ հայտնիր քո գաղտնիքները, որովհետև (դա) նրա համար մահ է:*

*Մի՛ սիրիր ուտելիքների և ըմպելիքների հագուրդը, եթե ոչ մարմինդ կդարձնես պոռնկության քաղաք ու սատանայի ամրոց:*

*Գինին բազմաթիվ ախտեր է բորբոքում և Աստծու երկյուղը հալածում:*

*Մի՛ սիրիր եղբորդ փափուկ ուտելիքներով, ըմպելիքներով կա՛մ պատվական հագուստներով, այլ՝ առանց դրանց, որ Կայենի պատիժը չժառանգես:*

*Ոչ ոքի մի՛ տրտմեցնիր ու ոչ ոքից մի՛ տրտմիր:*

*Սխալված աշակերտի վրա մի՛ բարկանա, որովհետև հիվանդն իր կամքով չի հիվանդանում:*

*Վերքը փափուկ դեղն է բուժում, ախտերը՝ բարեգործությունը:*

*Եթե Աստծու համար ես հալածվում, վախ մի՛ ունենա:*

*Դևերը հավաքվում են հարստությունը (կուտակելիս), իսկ հրեշտակները՝ (այն) բաշխելիս:*

*Ընչասիրությունը զուգակից է կռապաշտության:*

*Քրիստոսին կտեսնի նա, ով ատում է հարստությունը:*

*Ով եղբոր նկատմամբ ոխ ունի, դաշնակից է սատանային, ով կասկածով է քնում, բարկացնում է Աստծուն:*

*Երեկոյան անկողին մտնելիս հաշվիր, թե գերեզման ես իջնել:*

*Ով ջանում է մեկից բան խլել, Քրիստոսի վրա հույս չունի:*

*Եթե մեկը քեզանից խնդրում է, և տալիս ես, շնորհակալ եղիր Աստծուց, որովհետև դու ավելի շահեցիր, քան նա (խնդրողը):*

*Խոնարհությամբ ու հույսով հնազանդվելը և գիտակցաբար չարչարվելը կատարելություն է:*

*Այլ են առաքինությունները, և այլ՝ (դրանք) ձեռք բերելը:*

*Հանգիստն առաջարկեց հոգնածների համար և ոչ թե մարմնասերների, որոնք պիտի որդ գիրացնեն:*

*Ով ատում է բարեպաշտին և սիրում է ամբարիշտին, միևնույն չարիքն է գործում:*

*Եթե սրտացավությամբ չես սիրում եղբորդ, մի՛ մնա նրա հետ:*

*Մարմինդ նեղի՛ր գիտությամբ ու Գրքի վկայությամբ:*

*Մարդկանցից նրան տուր, ով կարիք ունի:*

*Վաղը գնալու ես հայրենիք (գերեզման), այնտեղ հանգստացիր:*

*Երբ Աստված քեզ փափուկ կերակուր կա՛մ մաքուր հաց, կա՛մ միրգ է ուղարկում, մինչև ուտելդ Քրիստոսի բաժինը կարիքավոր մարդուն տուր, որ Քրիստոսը քեզ սեղանակից լինի:*

*Երբ սեղան ես նստում, գլուխդ խոնարհիր, ուրիշ բան մի՛ տեսնիր, այլ՝ միայն քեզ, և կե՛ր գոհունակությամբ:*

*Մի՛ փնտրիր կերակուրների համեղությունն ու հագեցումը, այլ միայն (այն) որ քաղցածությունը վերացնի:*

*Միտքդ բեր դատաստանի օրը, որ պատրաստել է Աստված:*

*Այս կյանքը պատերազմ է:*

*Ով լավ է (ներքուստ), նաև զվարթ է երևում (արտաքուստ):*

*Ծերությունն ու հիվանդությունը ժամանակավոր պատերազմ են, որովհետև մարմնի ուժը պակասած է, վտանգը՝ չատտացած, հանդիստը՝ սակավ կամ բոլորովին էլ չկա, և սատանան բորբոքում է ցասման բոցը, առել է տալիս կարգը, հայհոյել է տալիս առաջնորդին, տրտնջալ է տալիս կրոնակիցներից, այստեղ կարիք կա սիրո ու գթության, համբերատար լինելու և նահատակության պսակ ստանալու:*

*Կրոնավորը պարտավոր է արյան գնով հակառակ կանգնել մարմնական ցանկություններին ու այնպես նվիրվել Աստծուն:*
*Քրիստոսն ասաց՝ «Ես եմ ճանապարհը, ճշմարտությունը և կյանքը, ով կամենում է ինձ մոտ գալ, թող ուրանա իր անձը, վերցնի խաչը ու գա իմ ետևից»: Իսկ ով իր անձը չուրանա, չի կարող Քրիստոսի խաչը կրել ու ճշմարտասեր չէ, իսկ ով ճշմարտասեր չէ, չի կարող հավիտենական կյանք ժառանգել, այլ ստվերի մեջ է ու խավարի մեջ է շրջում:*

*Անգործ մեղուն ժրաջան պիծակից լավ է:*

*Ով սյուն է դարձել և ամբողջ շինությունն իր վրա է հենել, եթե խորտակվի, ամբողջը կկործանի, ցած (կթափի): Այսպես էլ առաջնորդը, եթե Աստծու կամքով չշարժվի, ամբողջ միաբանությունը սատանայի կմատնի և առաջնորդելու փոխարեն կորստի պատճառ կլինի: Այդպիսի առաջնորդությունը մեծ մոլորություն է ու անբուժելի չարիք, որովհետև մարդիկ ավելի շատ օրինակին են հետևում, քան ճշմարտությանը:*

*Ով գայթակղում է փոքրիկներից մեկին, արժանի չէ գերեզմանի:*

*Եթե բոլոր կրոնակիցների հիվանդությունը քեզ ցավ չի պատճառում, մի՛ լինիր առաջնորդ:*

*Եթե անարժանին ինչպես պետքն է չես կշտամբում, մի՛ լինիր ուսուցիչ:*

*Ուսուցչին սուրբ վարքն է քաջասիրտ դարձնում:*
*Մեղրը քաղցր է, բայց հիվանդոտ մարմնին վնաս է տալիս, խրատն ու կշտամբանքն օգտակար են, բայց անօգուտ նրա համար, ով դեմքը դեպի հակառակ կողմն է ուղղել:*

## ՀՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻՆ ԹԱՏԵՐԱԽԱՂԵՐԻ ՄԱՍԻՆ

***Հովհան Մանդակունին (403–490) նշանավոր մատենագիր է, եկեղեցական գործիչ, եղել է Հայոց կաթողիկոս (478–490)։ Աշակերտել է Մեսրոպ Մաշտոցին։ Կարևոր մասնակցություն է ունեցել երկրի հասարակական, հոգևոր ու քաղաքական կյանքում։ Վահան Մամիկոնյանի գլխավորած հակապարսկական պայքարի գաղափարախոսներից է։ Նրա նախաձեռնությամբ է 484 թվականին կաթողիկոսական աթոռը Վաղարշապատից փոխադրվել Դվին։ Հեղինակ է բազմաթիվ ծիսական, դավանաբանական, բարոյախրատական երկասիրությունների, ճառականների։***

***Թատերախաղերի մասին Հովհան Մանդակունու ճառը տալիս ենք ըստ Ա. Գ. Մաղոյանի թարգմանության, որը կատարված է «Տեառն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց Հայրապետի ճառք» հրատարակությունից (Վենետիկ, 1836, էջ 123–129)։***

### *ՃԱՌ ԱՆՕՐԵՆ ԴԻՎԱԿԱՆ ԹԱՏԵՐԱԽԱՂԵՐԻ ՄԱՍԻՆ*

*Ո՞ւր գնամ հանգչեմ և լամ այս ահեղ անօրինությունը՝ որ ճմլում է հոգիս. և կամ ո՞ւր թաքնվեմ՝ մեղքիս վշտերից համրացած, և կեղեքվելով ամբողջ զազրելի ու չարալուր այս համբավից, որ տրորում է միշտ սիրտս և գալարեցնում աղիքներս ու որովայնս՝ ողբալով։ Եվ մշտապես հալում ու խեղդում են ինձ տրտմություններս. որովհետև ամեն ժամ անառակ պղծություններ եմ լսում և տեսնում անօրեն ամբարշտություններ։ Եվ սրտիս բազում թախանձանքներից ոսկորս կպավ հողին, և իմ մարմինը գետնաքարշ եղավ, որովհետև բազում մեղքերի հանդարտության խռովումից չորացա ինչպես խոտ և ինչպես անշունչ պատկեր. և իմ մտքի ապշությունից սխալանքներս անտես առնելով՝ մոռացա, և ձերն եմ քննում հանապազ։ Քանի որ չար լուր և զազրելի համբավ հասնելով մեր լսելիքին՝ հնչում են մշտապես, որից սաստիկ ժանտություն է բուրում և նեխման ու փտության աղտեղություն. և չարահոտ մի բույր վեր ցոլալով ապականում է Սուրբ Եկեղեցին, ուր բոլոր արդարների հոգիներն ահագմայլ ողբում են անօրինությունը։*

*Եվ ես՝ լի ամեն տեսակ հանցանքով, այդ եմ սգում ու հառաչում. զի ձեր գարշելի անօրինություններից ամեն ժամ սատանայական թատրոնները ցնծում են խայտալով, և Քրիստոսի եկեղեցիները միշտ ողբում են դառնապես։ Քանի որ Սուրբ Եկեղեցու մանուկներին իրեն հպատակեցրեց սատանան, որոնք պղծվեցին ու պղտորվեցին տեսա-*

*րանների անառակ թատրոններում: (Նա), որ միշտ ու հանապազ ուզում է մարդկանց հեռացնել Աստծո ողորմությունից և ամենապայծառ անանց բարություններից և տանել բաժնեկից դարձնել իր տանջանքների ահեղ աղետներին: Դրա համար անտեսեցի իմ բազում հանցանքները, ձեր ցավերին եմ լինում վշտակից և ողբում ձեր անձի կործանման աներևույթ վերքը: Որովհետև մերժելով արհամարհեցիք Աստծո պատվիրանների խորհուրդները, և ոտնահարելով կոխոտեցիք առաքելական եկեղեցու հավատը, և ոչինչ համարեցիք Քրիստոսի արյան և մարմնի սրբությունը, որ մշտապես ընդունում եք ահավոր և սոսկալի սեղանից:*



**Թատերախաղ**
**(դերասանը դիմակով)**

*Եվ այժմ լիովին ընկղմված եք դիվական մոլորության մեջ և գերված, գրավված սատանայի խորհուրդներից, շտապում եք ընկնել նրա դառնահամ որոգայթները, գնալ մտնել խաղերի ապականիչ հրապարակները, լսել ականջ խաբող աղտեղի ձայները, և գուսանների գայրացած ու պղծացած անօրեն ու չարալլուկ կատաղություններ, որոնք միշտ հալածում են Սուրբ Հոգու շնորհները և սատանայի մահաբեր պիղծ խորհուրդը ձեր սրտերում ու մտքերում սերմանում: Որից բռնվելով տոչորում է բոցը տեսակ-տեսակ ախտերով՝ հնազանդյալների մարմիններում, որոնք փշերի ու տատասկների նման վիրավորում են անձերդ, և հավաքելով կուտակում են դժվարակիր բեռներ՝ կորուսյալ ոգիների վրա: Ու իրենց անձանց համար վաստակած այրիչ հուրը և սատակիչ սուրը՝ ելնում են պղծությունների թատրոններից՝ կարեվեր լինելով. և սաստկապես խոցված գաղտնի նետերից սա-*

*տանայի, որ չարաչար վիրավորում է ոգիները և փոքր է կարծեցնում մեծամեծ անօրինությունները, որից պետք էր սարսել և ողբալ մշտապես, և փախչել, հեռանալ բազում երկյուղով: Որովհետև չար է սովորույթը, չար են և նրա հորդորիչները՝* ***գինի, գուսան և սատանա*** *և ցոփագնացություններով ու վավաշոտության հափրանքով մոլորված մտքեր, որ կամահոժար և դյուրահավան ընդունում են չար սերմերը սատանայի, մանավանդ թեթևամիտ և վայրենի անհամեստ կանանց ցեղը, արագալուր և հեշտահավան և դյուրապատիր, որոնք ձանձրույթից անառակացած միշտ աներկյուղ շտապում են թատերավայր, անօրեն խաղեր և սատանայական տեսարաններ դիտելու հրապարակում. ելնելով վերև, դիտավայրում նստում, խորհում, դիտում են իրենց նմաններին՝ չար [գործերի մեջ], որոնք թեպետև անօրեն գործին դեռ մասնակից չեն, բայց խոցող սպանիչ նետերը կրում են սրտերում, որոնցից և հետո պիտի մահանան, ինչպես որսորդների նետերից վիրավոր գազանը, որ թեպետ հիմա թակարդից պրծավ, սակայն նետերը կրելով կմեռնի:*

*Այդ ինչպե՞ս ղաղարեցնենք այն ցոլացող բոցի ահեղ տոչորումը կամ երբևէ կարո՞ղ եք գտնել աներևույթ վերքերը բուժելու հնար և կամ ե՞րբ ավերելով կկործանենք թատերական պղծությունների վայրերը, մահաբեր որոգայթը, բազմաչար ժողովը, բոլոր ախտերի արվեստանոցը...*

*Ես չեմ կարող ասել չարիքների մյուս տեսակ-տեսակ կերպերը, որ թատերախաղերն են սովորեցնում. ամբարտավանությունը, հայհոյությունը, նենգությունը, չարահնարությունը, չարակնությունը, նախանձը, բամբասանքը, որի պատճառով երկրի վրա կթափվեն Աստծո պատուհասները, որ սաստիկ սրտմտությամբ տանջանքի կմատնի: Ահա այս բոլոր անօրինություններն են ձեռք բերում՝ ովքեր մտնում են խաղահրապարակները և իրենց մարմիններում բազմացնում են սատանայի սերմերի չար պտուղը:*

*Այդ ո՞ր բերանը կարող է ողբալ և լալ այնպիսի աղետյալներին ու պղծվածներին. և կամ ի՞նչ լեզու կարող է պատմել անթիվ աղետները, որ այնտեղ կստանան. և կամ ո՞ր միտքը ցույց կտա ահեղ տանջանքների բազմությունը՝ որ գեհենի հրի հոսանքում պատրաստվում է նրանց և աստվածամարտ սատանային, որոնք խավարայիններին ախորժանքով ընդունեցին: Եվ այժմ ինչի՛ համար ես մատնվում այդպիսի տանջանքների և կամ ինչ ստացար պիղծ խաղից. մեղկություն և ցոփություն, և թեթևություններ և ոչ մի օգուտ, այլ՝ անթիվ ահեղ աղետների բազմություն: Որովհետև թեպետ անառակներին ցանկալի*

*են լինում պիղծ թատրոնները, ուր միշտ ախտերից ցանկություններ են հալչում և ծորում, այլ առողջներին է երևում տաղտկալի պղծությունն ու ամոթալի վավաշոտությունը:*

*Կանայք բողերի բարք են ձեռք բերում, և այրերը՝ մատակախաղաց ձիերի, որոնք անօրեն զազրախոսությամբ անասուններից էլ վայր են իջնում, և շների փսխածից ավելի աղտեղի՝ փսխում են տաղտկալի խոսքերի գարշությունները, որոնցից նեխության աղտեղություն և զազրելի հոտ է ելնում, որ զզվեցնում է երկյուղած անձանց և ցանկալի է դևերին. քանի որ այդպիսի խայտառակվածների մեջ սատանան խռովություն է ձգում: Որովհետև ուր կատակներ ու գուսաններ կան, և՛ խաղ, և՛ լկտի ծաղրանք, այնտեղ դևերն են նրանց հետ պար բռնում և գեխացածների մտքերում բազում աղտեղություններ են սերմանում, առավել ևս մոլեգնության են մղում գուսաններին՝ պիղծերին ու սրբության շնորհը հալածողներին, ցանկության հուրը բորբոքողներին, պատվիրանները քամահրողներին, սատանայի խորհուրդների կարապետներին, անօրեններին և աստվածամարտներին, ամեն տեսակ արդարության թշնամիներին: Դրանց պետք էր քարկոծել և աշխարհից հալածել, նրանց գեխացրածներին՝ զբոսաբանի խաղարաններում, ուր մտնում են ողջանդամ և ելնում վիրավոր. Քրիստոսից մերկացած և սատանայով զգեստավորված. շնորհների հոգին մերժած և լցված դևերի պիղծ հոգով: Զի բոլորը, որ հավատով ու երկյուղածությամբ են մոտենում Քրիստոսին, լուսավորվում են Սուրբ Հոգով, և օր-օրի առաքինի գործերով վեր են բարձրանում և գնալով հեռանում սատանայի բոլոր խաբկանքներից: Եվ ովքեր թատերախաղերի պղծությամբ մշտապես հաղորդակից են լինում դևերին և խավարանում են վարքով միգապատվելով մթնում և լցվում սատանայի պիղծ ոգով, և օրըստօրե ծանրանալով անօրինություններով՝ տապալվում են վայր... Եվ սրա համար ավելի ախորժելով են գնում դևերի հավաքատեղին, փութալով սատանայի կանչին, քան՝ Քրիստոսի Սուրբ Եկեղեցի: Զէ՞ որ թատրոնները դևերի հավաքարան են, և բոլոր անառակ և գուսանամոլ հարբեցողները, որ գեխում-ցոփանում են անօրեն-անաստվածաբար, քանդելով լեզվի սանձերը և բերանի կապն արձակելով ուտում են ու չվայտանում համադամ կերակուրներով, և հոտը մտնելով նրանց բերաններից ժանտություններ է բուրում, և խորհում ու տեսնում են սատանայի բոլոր ցանկությունները և չեն ճանաչում սատանայի նետերը: Խփում և վերքերը հանգստացնում է և չի [թույլ] տալիս իմանալ, որպեսզի ապաշխարությամբ չբուժենք, որովհետև գող է և հայտնի ճանապարհով չի գնում,*

*որ զգուշանանք, այլ՝ գաղտնի, և հետապնդում է և սովորեցնում է մեծամեծ պատվիրաններն անամոթաբար արհամարհել, և կարծել է տալիս, թե փոքր են [դրանք], որ չզգուշանանք: Գիտե, որ պատվիրաններն արգելում են տգեղ և դատարկ խոսքերը, բամբասանքն ու հայհոյանքները. և ցոփ գուսաններն ավելի շատ են թափում բերաններից բազում խեղկատակություններ և ցնդաբանություններ, գարշելի ու դատարկաբան խոսքեր: Արհամարհանք, ծաղր ու հայհոյություն է հոսում նրանցից հանապազ. որովհետև դևերը փութով հասնում են ծաղրի ու խառնախոսության ժամանակ և բազում ախտեր բերելով ուտեցնում, խմեցնում են նրանց, որ այնտեղ չվայտանում են: Սրա համար պետք է լալ ու ողբալ այդպիսի անառակությունները, մանավանդ խելակորույս կատակները՝ լկտի բազմականների մեջ. դիվահարի նման գեխանում, ծովում, գալարվում, ցատկոտում են և բերանի կեղտով զազրելի դարձնում բոլորին. ոմանց հայհոյում, ոմանց բամբասում, ոմանց թշնամանում և ոմանց ծանակում, ամոթալի խեղությամբ կուրացնում է. ոմանց խաբում և պատվով մեծամտացնում. կատաղի շան պես առհասարակ բոլորին խածոտում է:*

*Ի՞նչ ես անում, ո՛վ թշվառական, ինչո՞ւ չես ջանում ազատվել այդ չարաչար ամբարշտությունից, ինչո՞ւ չես սթափվում՝ այդ անզգամությունից ուշքի գալու, ինչո՞ւ չես ողորմում կորնչող ոգուդ, ինչո՞ւ չես լալիս ու ողբում անօրինություններն այս, ինչո՞ւ կրակ ես ավելացնում դառն այրումի կրակին, ինչո՞ւ մշտապես ընթանում ես կայծակների ու փշերի վրայով, ինչո՞ւ անընդհատ զամվում ես մեղաց բեռներին, ինչո՞ւ ես քարավեժ ու դարահոս լինում բարձունքից, ինչի՞ համար ես սուր սրում և խոցվում դրանով. չէ՞ որ ոչ ոք հրով հուր չի հանգցնում և ոչ էլ չարով բարու հանդիպում: Ո՞վ է, որ փուշ տնկում և խաղող է քաղում կամ որոմ ցանում և ցորեն հնձում. և ոչ ոք անառակ վարքով չի [արժանանում] տեսուն Քրիստոսի և չի ժառանգում արքայությունը, այլ դատապարտվում է գեհենի հրին՝ թունավոր որդերի ընկերակցությամբ: Եվ ով այդպիսի անօրեն լկտիությամբ և գինեմոլ գեխությամբ ապրի, և դիվական թատր ու ծաղրով, գուսաններով զբաղվի թող ամենևին չհուսա փրկվել տանջանքների հրից: Հիշիր ահեղ պատգամը՝ վա՛յ նրանց, որ ծիծաղում են հիմա, որովհետև սգալու ու ողբալու են նրանք. «Վա՛յ նրանց, որ գինի են ըմպում խնջույքին և որ օծվում են անուշ յուղերով. վա՛յ ձեզ, մեծահարուստներ, որ այստեղ ստացաք ձեր բարության հատուցումը»[1], որովհետև «Բազում նեղություններով պետք է մտնել Աստծո արքայությունը»[2]: Մինչդեռ Քրիստոս այս աշխարհում լալ և սգալ պատվի-*

*րեց»[3], իսկ դու ծիծաղում ու ցնծում ես և չես զարհուրում ու դողում Աստծո ահեղ դատաստանից, որ արդար է քննում բոլոր՝ և կամովին, և ակամա [գործերը], որ ծուլությունից և կամ մոռանալով եք կատարում...*

*1. Տե՛ս **Ղուկ.**, Զ, 24-25:*
*2. **Գործք**, ԺԴ, 21:*
*3. Տե՛ս **Հովհ.**, ԺԶ, 20:*

## ՍԵԲԵՈՍԻ ԻՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՄԱՍՅԱՆ*[1]

### *Պատմություն թագավորական*[2]

*Վեպ արիական, նվաճումն տիեզերական, ելուզակ սասանական՝ Ապրվեզ Խոսրովյանի[3] մասին, որ հրդեհելով բոցավառեց ամենայն երկիրը, դղրդացրեց ծով ու ցամաք՝ ավերածություն սփռելու ողջ երկրի վրա:*

*Եվ արդ՝ ես վիպասանելով կպատմեմ երկրում կատարված կործանարար անցքերի զրույցները, ի վերուստ սաստկացած սրտմտությունը և ներքևում բորբոքված բարկությունը, հրի և արյան հեղեղները, ելուզակների արշավանքները, մահաբեր ասպատակը, ձևերի գոչյունը, վիշապների աղաղակը, քավդեա ցեղերի և հսկայազն մարդկանց, քաջ սպառազեն հեծյալների մասին՝ արևելքից արևմուտք, հյուսիսից հարավ: Եվ հարավայինի[4] մասին, որ զարթնեց մեծ բորբոքմամբ, և հարձակվեցին միմյանց վրա՝ կատարելու Տիրոջ բարկացայտ հրամանն ամբողջ երկրի վրա. նրանք, թռչելով որպես օդի մրրիկ, փոթորկելով, ընթացան՝ ապականելու երկրի վրա ամեն ինչ, ավարելու լեռներն ու բլուրները, պատառելու դաշտավայրերը, խորտակելու վեմերն ու քարերը երիվարների ոտքերի տակ և սմբակներին առաթուր:*

*Եվ արդ՝ պիտի ասեմ Աստծուց անիծյալ, կործանիչ և ապականող Խոսրովի մասին ասքը:*

*1. Որոշ ուսումնասիրողներ բնագրի «Մատեան ժամանակեալն»-ը թարգմանում են ոչ թե առաջարկվող «Ժամանակակից մատյան», այլ՝ «Ժամանակագրական մատյան»: Թվում է, թե վերջինս ավելի մոտ է երկասիրության ոգուն և բովանդակությանը:*

*2. Հայագետների մեծ մասը կարծում է, թե սա երկասիրության այն մասն է, որտեղից սկսվում է Սեբեոսի բուն Պատմությունը:*

*3. Խոսքը Սասանյան արքա Խոսրով II Փարվեզի (591-628) մասին է:*

*4. Նկատի ունի արաբներին:*

## ՍԵԲԵՈՍԸ Ս. ՀՌԻՓՍԻՄԵ ՏԱՃԱՐԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍԻՆ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԼԷ.*** ***Խոսրով Ապրվեզի թագավորության քսանութերորդ տարում[1] Կոմիտաս կաթողիկոսը[2] Վաղարշապատ քաղաքում քանդեց Սուրբ Հռիփսիմեի մատուռը, քանզի խիստ ցածր ու մթին էր այդ կառույցը, որ չինել էր Սուրբ Ներսեսի որդին՝ Հայոց կաթողիկոս Սուրբ Սահակ Հայրապետը[3]:***

***Արդ, մինչդեռ քանդում էին մատուռի պատը, հանկարծակի երևաց լուսավոր ու չքնաղագեղ արքունական մարգարիտը, այսինքն՝ Հռիփսիմե Սուրբ կույս-թագուհու տապանակը: Բայց քանի որ անդամ առ անդամ հոչել էին նրան՝ անդամահատելով իրարից, և կնքված էր Սուրբ Գրիգորի մատանիով և մատանիով երանելի Սահակի՝ Հայոց կաթողիկոսի, որը [ևս] չհամարձակվեց բացել այն: Եվ [Կոմիտաս կա-***



***Ս. Հռիփսիմե տաճարը (618 թ.)***

*թողիկոսը] կնքեց իր մատանիով ևս, քանզի արժանի իսկ էր կնքել այսպիսի մարգարիտը [Աստծու] երեք նվիրյալների երեք մատանիներով:*

*Ով մարգարիտ, որը ծովածին չէր, այլ մարգարիտ սերված՝ թագավորական տոհմից, սնյալ սուրբ գրկում և նվիրված Աստծուն: Արդարները ըղձում էին քեզ տեսնել, և երանելի Կոմիտասը խանդակաթ էր քո սիրով:*

*Երանելիի հասակի չափը ինը թիզ և չորս մատ էր[4]: Ամբողջ հյուսիսային կողմը ցնծալով գալիս էր երկրպագության, և չատ ախտաժետներ բժշկվեցին բոլոր ցավերից: [Կոմիտասը] կառուցեց եկեղեցին և պատերի գիջության[5] պատճառով երանելիի [տապանակը] մինչև կրի ցամաքելը թողեց բացօթյա: Ապա ամփոփվեց իր հանգստարանում:*

*[Կոմիտասը] հանեց նաև Սուրբ կաթողիկեի փայտե ծածկը, նորոգեց պատի խախուտ մասը և չինեց քարե ծածկ[6]: Սա եղավ Սուրբ կաթողիկեի վանրեց Հովհանիկի տարիներին:*

*1. Այսինքն՝ 618 թվականին:*

*2. Խոսքը Կոմիտաս Ա Աղցեցի կաթողիկոսի (615-628) մասին է:*

*3. Ագաթանգեղոսի հստակ վկայության համաձայն, Ս. Հռիփսիմեի մատուռը կառուցել էր Ս. Գրիգոր Լուսավորիչը: Այստեղ հավանաբար խոսքը գնում է Վահան Մամիկոնյանի մարզպանության օրոք տեղի ունեցած վերանորոգության մասին:*

*4. Նչված ոչ թե Ս. Հռիփսիմեի հասակի, այլ նրա տապանակի չափն է:*

*5. Այսինքն՝ խոնավության:*

*6. Կարող է այն տպավորությունը թողնել, թե խոսքը Ս. Էջմիածնի Մայր տաճարի մասին է, սակայն այս դեպքում ևս ի նկատի ունի նույն Ս. Հռիփսիմեի տաճարը:*

## ԶՎԱՐԹՆՈՑԻ (Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐԻՉ) ԵԿԵՂԵՑՈՒ ԿԱՌՈՒՑՈՒՄՆ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

***Գլ. ԽԵ.*** *... Այն ժամանակ Հայոց Ներսես կաթողիկոսը[1] որոչեց իր համար նստավայր կառուցել այն Սուրբ եկեղեցիների մոտ, որ Վաղարշապատ քաղաքում էին՝ այն ճանապարհի վրա[2], որտեղ, ասում են, Տրդատ [Մեծ] թագավորն ընդառաջ ելավ Սուրբ Գրիգորին: Շինեց այնտեղ և մի եկեղեցի հանուն երկնային Զվարթունների[3]՝ երկնային զորքերի բազմության, որոնք երազում երևացին Սուրբ Գրիգորին:*

*Զվարթնոցի Ս. Գրիգոր տաճարի (մոտ 652 թ.) ավերակները*



*Տաճարի շինարար Հովհանի դիմաքանդակը*



*Արևի ժամացույց Զվարթնոցից*

*Կառուցեց այդ եկեղեցին՝ բարձրաշեն, զարմանալիորեն չքնաղ, աստվածային պատվին արժանի, ում նվիրեց: Աղբյուր բերեց, [ջուր] անցկացրեց գետից[4] և ողջ քարքարոտ վայրերը մշակեց, տնկեց այգիներ ու ծառաստաններ և նստավայրը շուրջանակի պատվարեց գեղեցկաշար բարձր պարսպով[5]:*

*1. Խոսքը Հայոց կաթողիկոս Ներսես Գ Տայեցու (Իշխանեցի) մասին է (641-661):*

*2. Նկատի ունի Վաղարշապատից Բագավան տանող ճանապարհը:*

*3. **Զվարթուններ** – բառացիորեն նշանակում է հրեշտակներ:*

*4. Այսինքն՝ Քասախ գետից:*

*5. Ուսումնասիրողների կարծիքով Զվարթնոցի եկեղեցու կառուցումն սկսվել է 643 թվականին և ավարտվել է 661 թվականին:*

## ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻՆ ԻՐ ՈՒՍՈՒՄՆԱՌՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Անանիա Շիրակացին (Շիրակունի, մոտ 605-690) ոչ միայն հայ, այլև միջնադարյան համաշխարհային մշակույթի ու գիտության ականավոր ներկայացուցիչներից է: Ճշգրիտ գիտությունների առաջին խոշոր ներկայացուցիչը Հայաստանում: Սովորել է Շիրակավանի դպրեվանքում, ապա Տրապիզոնի համբավավոր ուսումնագիտական կենտրոնում, հմտացել մաթեմատիկայի, փիլիսոփայության, տոմարագիտության, աշխարհագրության, պատմության բնագավառներում: Վերադառնալով Հայաստան զբաղվել է մանկավարժությամբ և գիտական աշխատանքներով:***

***Անանիա Շիրակացին հեղինակ է բազմաթիվ երկասիրությունների, որոնցից ամենաինքնատիպը Թվաբանության դասագիրքն է: Նրան է վերագրվում նաև հռչակավոր «Աշխարհացույց»-ը: Սակայն, այժմ ընդունված տեսակետների համաձայն, Շիրակացին սոսկ այն ընդլայնել է ու խմբագրել:***



*Անանիա Շիրակացի*
*(գործ՝ Հր. Ռուխկյանի)*

***Եզակի հայ մատենագիրներից է, որ թողել է իր ինքնակենսագրությունը՝ «Խոսք երիցս երանելի ուսուցիչ Անանիա Շիրակացու՝ իր կյանքի որպիսության մասին» վերտառությամբ: Այն բազմիցս է հրատարակվել ու թարգմանվել այլ լեզուներով (ռուսերեն, գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն և այլն): Ստորև տրվող աշխարհաբար թարգմանությունը իրականացրել է Ա. Գ. Աբրահամյանը, որ լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարով (տե՛ս Անանիա Շիրակացի, Մատենագրություն, Երևան, 1979):***

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

### *I. ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ, էջ 25-29*

### *ԽՈՍՔ ԵՐԻՑՍ ԵՐԱՆԵԼԻ ՈՒՍՈՒՑԻՉ ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑՈՒ՝ ԻՐ ԿՅԱՆՔԻ ՈՐՊԻՍՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

*Ես՝ Անանիա Շիրակացի, Անանիա գյուղից, որ (սովորելով) յուրացրի մեր՝ հայոց ազգի դպրությունը և հմտացա Աստվածաշունչ գրքերին, օրըստօրե լուսավորում էի մտքիս աչքերը՝ Սաղմոսերգուի[1] խոսքին համապատասխան: Ամեն բանում լսում էի իմաստունների և իմաստության հետամուտ եղողների երանության (խոսքերը), ինչպես Սողոմոնի կողմից է հանձնարարվում. «Ստացիր իմաստություն և առավել պարսավիր տգիտությունը՝ իբրև խավարի ծնունդ»[2]: Եվ (ապա)՝ «Դու գիտությունը մերժեցիր, ես էլ քեզ կմերժեմ»[3]: Եվ ես զարհուրելով այս սպառնալիքներից, երանությանը հանգրվանեցի և փափագեցի հետևել իմաստասիրությանը: Հույժ սիրելով համարողության արվեստը, խորհեցի, թե առանց թվերի ոչինչ չի հիմնավորվում՝ մայր համարեցի այն բոլոր ուսմանց: Եվ քանի որ Հայոց մեր աշխարհում չկար այնպիսի մեկը, որ տիրապետեր իմաստությանը, և ոչ էլ նույնիսկ որևէ տեղ գիտական գրքեր էին ճարվում, ուստի մեկնեցի Հունաց երկիրը: Հասնելով Թեոդոսուպոլիս, ես այնտեղ գտա Եղիազարոս անունով բանիմաց մեկին, որը հմուտ էր եկեղեցական գրքերին: Նա պատմեց ինձ, թե Չորրորդ Հայքում ապրում է մաթեմատիկոս մի անձնավորություն՝ Քրիստոսատուր անունով: Ու երբ գնացի, գտա հանձնարարված մարդուն. վեց ամիս մնալով նրա մոտ, համոզվեցի, որ նա սպառիչ չի տիրապետում (այդ) գիտությանը: Այնուհետև շտապեցի մեկնել Կոստանդնուպոլիս. (ճանապարհին) հանդիպեցի այնտեղից եկող իմ ծանոթներին, որոնք ասացին ինձ. «Ինչո՞ւ ես հանձն առել այսքան երկար ճանապարհորդություն, չէ՞ որ Տյու-*

*քիկոս Բյուզանդացի գիտունը գտնվում է մեզ մոտիկ՝ Պոնտոսի ծովեզրյա այն քաղաքում, որը կոչվում է Տրապիզոն: Նա իմաստությամբ լի մարդ է, գիտակ հայերեն դպրությանն ու լեզվին և ճանաչված թարգմանիչներից»: Ես հարցրի նրանց, թե՝ «Որտեղի՞ց դուք այդ գիտեք»: Իսկ նրանք պատասխանեցին. «Բազում անգամ այս ճանապարհով ընթանալիս շատերին ենք տեսել՝ տարբեր տեղերից նրա մոտ (սովորելու) եկած, նրա փայլուն գիտության պատճառով: Այլև այժմ էլ մեզ նավակից եղավ Կոստանդնուպոլսի պատրիարքի Փիլաքր սարկավագը, որը շատ երեխաներ էր տանում նրա մոտ ուսանելու: Հասնելով Սինոպ (քաղաքը), մենք պատահեցինք մեր ընկերներին, բաժանվեցինք նրանից և ճանապարհվեցինք ցամաք: Եթե դու արագ գնալու լինես՝ կգտնես այնտեղ Փիլաքրին»[4]:*

*Լսելով այս, խնդալից սրտով փառավորեցի նախախնամող Աստծուն, որ նեցուկ է իր ծառաների փափագը կատարելուն, ինչպես որ ասում են, թե. «Հայցեցեք և կգտնեք»[5]: Գնացի ու գտա նրան Սուրբ Եվգենիայի վկայարանում: Պատմեցի նրա մոտ գալու պատճառը: Նա ուրախությամբ ընդունեց ինձ և ասաց. «Գոհություն Աստծուն, որ քեզ ուղարկել է գիտության նպատակով, որպեսզի տանես այն Սուրբ Գրիգորի երկիրը: Եվ առավել ուրախ եմ, որ ինձ է աշակերտում այդ երկիրը, որովհետև ես իմ երիտասարդության տարիներին շատ ժամանակ մնացել եմ բարեսիրության մեջ Հայոց երկրում, և ուրախանում եմ գիտությունս այնտեղ տալու համար, քանի որ իմ գտնված ժամանակ տգիտություն էր այնտեղ»:*

*Եվ Տերն ինձ շնորհ տվեց այդ մարդու առաջ: Նա սիրեց ինձ որդու նման և պարապեց ինձ հետ իր ողջ իմացությամբ, այնպես, որ նախանձել սկսեցին իմ բոլոր աշակերտակիցները, որոնք արքունիքից էին:*

*Մնալով նրա մոտ ութ տարի, ես լիովին յուրացրի համարողական գիտությունը, փոքր-ինչ էլ ծանոթացա այլ գիտություններին և հմտացա բազմաթիվ այնպիսի գրքերի, որոնք մեր լեզվով դեռ չէին թարգմանված: Ամեն տեսակի գրքեր կային նրա մոտ՝ հայտնի և գաղտնի, արտաքին (հեթանոսական), գիտական և պատմական գրքեր, բժշկարաններ, ժամանակագրություններ. ի՞նչ թվարկեմ մեկ առ մեկ, քանի որ չկար այնպիսի գիրք, որ նրա մոտ չգտնվեր: Թարգմանության մեջ էլ Սուրբ Հոգուց պարգևված այնպիսի շնորհք ուներ, որ երբ ցանկանում էր հունարեն գրված գիրք թարգմանել, ուրիշ թարգմանիչների պես չէր դեգերում, այլ հունարենն այնպես էր հայերեն կարդում, որ կարծես հայերեն գրված լիներ: Ցանկանալով, որ դուք անտեղյակ չլինեք այդ բազմահմուտ մարդու առաքինությանը,*

*[ուզում եմ] ծանոթացնել ձեզ, թե ինչպե՞ս է, որ նա գիտեր մեր լեզուն և ինչպե՞ս էր գիտության մեջ այդքան պատրաստություն ձեռք բերել:*

*Նա պոնտացիների երկրից էր, Տրապիզոն քաղաքից: Երիտասարդության հասակում ծառայել էր Տիբերիանոս[6] կայսեր զորավար Հովհանի մոտ[7], որը գտնվում էր Հայաստանում: Այստեղ նա մնում է շատ տարիներ՝ մինչև Մորիկ թագավորի ժամանակները[8], սովորում է մեր լեզուն և դպրությունը: Իսկ պարսկական զորքերի՝ հույների վրա կատարած հարձակման ժամանակ, որը տեղի ունեցավ Անտիոքի մոտ, պատահում է այնպես, որ նա վիրավորվում է մարտում, փախչելով՝ հասնում է Անտիոք, իսկ իր ունեցած ողջ գույքն ավար են վերցնում: Երկար ժամանակ գտնվելով հիվանդ վիճակում, նա կսկծանքով է հիշում իր ունեցվածքի կորուստը, Աստծուց խնդրում է իր վերքերի բուժում և ուխտում՝ ասելով. «Եթե չնորհես ինձ առողջ կյանք, այլևս անցավոր գանձ չեմ կուտակելու, այլ հետամուտ եմ լինելու գիտության գանձին, ինչպես իմաստունն է ասում. «Խրատ վերցրեցեք և ոչ արծաթ, [սիրեցեք] ավելի գիտություն, քան ընտիր ոսկի»[9]: Եվ Աստված կատարում է նրա խնդրանքը. առողջանալուց հետո գնում է Սուրբ քաղաք Երուսաղեմ: Այնտեղ մնում է մեկ ամիս, [ապա] տեղափոխվում Աղեքսանդրիա, ուր ուսանում է երեք տարի: Հետո մեկնում է Հռոմ և, մնալով այնտեղ մի տարի, գալիս է Կոստանդնուպոլիս: Այստեղ նա գտնում է մի նշանավոր անձնավորության, որ դասավանդում էր քաղաքի իմաստասերներին: Նրա մոտ մնում և սովորում է ոչ սակավ ժամանակ և կատարյալ իմաստասիրությամբ վերադառնում իր ծննդավայրը: Չնայած պատրիարքը ու քաղաքի իշխանները շատ են խնդրում, որ նա չհեռանա Կոստանդնուպոլսից, սակայն նա չի լսում նրանց՝ կարեկից հանդիսանալով իր երկրին, ինչպես գրված է [Սուրբ Գրքում]: Գալով [հայրենի քաղաքը], նա վարում է օրինակելի կյանք: Քիչ տարիներ անց (Կոստանդնուպոլսում) մահանում է նրա ուսուցիչը: Աշակերտների մեջ չգտնելով նրան հավասար մեկին՝ հաջորդելու նրան, խնդրանքով դիմում են ցանկալի Տյուքիկոսին, որ գա և զբաղեցնի նրա տեղը: Միաժամանակ ստանում է նաև թագավորի հրամանը: Սակայն նա հանձն չի առնում, ասելով թե՝ «Երկնայինների թագավորին ուխտել եմ՝ չհեռանալ այստեղից»: Այնուհետև այնտեղ էին գալիս նրա մոտ սովորելու: Բայց ես այնպես եմ կարծում, թե Աստծու նախախնամությունը նրան պատրաստել է մեզ մոտ գիտությունը ծավալելու համար:*

*Եվ ահա ես՝ նվաստս հայաստանցի, սովորեցի նրանից այս մեծազոր գիտությունը, որ թագավորներին է ցանկալի և բերեցի մեր եր-*

*կիրը՝ առանց որևէ մեկի աջակցության, շնորհիվ միայն իմ անձնական ջանքերի և օգնականությամբ Սուրբ Գրիգորի աղոթքների, թեպետ և ոչ ոք գտնվեց մեծարող և շնորհակալ իմ աշխատանքի համար, որովհետև մեր ժողովուրդն իմաստասիրություն և գիտություն սիրող չէ, այլ՝ ծույլ է և ձանձրացող: Որովհետև, երբ ես վերադարձա, շատերը եկան ինձ մոտ սովորելու, և փոքր-ինչ խելամտած՝ թողեցին ինձ և հեռացան, չմնացին մինչև գիտության (դասընթացի) ավարտը: Առօրյա կարիքների համար նրանք բավական համարելով այն, ինչ ստացել են: Եվ ինձնից շատ շուտ առանձնանալով, սկսեցին ուսուցանել այնպիսի բաներ, որ չգիտեին, և իրենց ներկայացնել իբրև ուսուցիչներ, որոնց հասու չէին: Կեղծավորներ և սնափառներ. ուզում են գիտնականի կեցվածք ընդունել և մարդկանց կողմից ուսուցչապետներ կոչվել: Իմ հասցեին նրանք տգիտությամբ պարսավանքի խոսքեր էին ասում, որ իրենք էին հերյուրել: Թե ես չարություն ունենայի նրանց նման՝ բերանս չէի բաց անի սովորեցնելու ոչ մեկին՝ իբրև արդարև ապերախտների: Սակայն ես միշտ մտաբերում եմ տերունական ձայնը, որ ասում է «Իմն է վրեժխնդրությունը և ես կհատուցեմ»[11]: Եվ դարձյալ թե՝ «Գցիր քո ոսկին սեղանավորին, և ես գալով՝ տոկոսներով կպահանջեմ»[12]: Դարձյալ ոչ ոքի չեմ արգելել, ովքեր ցանկացել են սովորել և այսուհետև էլ չեմ արգելի: Եվ այս եմ առհավետ կտակում ձեզ՝ ինձնից հետո աշխարհ եկող ուսուցիչներիդ՝ իմաստություն և գիտություն սովորել ցանկացողներիդ:*

*Եվ Քրիստոսին՝ ձիրք շնորհողին, փառք, պատիվ և իշխանություն այժմ և միշտ և հավիտյանս հավիտենից, ամեն:*

*1. Նկատի ունի Սողոմոն Իմաստունին, որը հեղինակն է Աստվածաշնչում զետեղված «Սաղմոսարան»-ի:*

*2. **Առակ.**, Դ, 3:*

*3. **Ովսէ**, Դ, 6:*

*4. Այդ ժամանակ Կոստանդնուպոլսի պատրիարքն էր Սերգիոս եպիսկոպոսը (610-638):*

*5. **Մատ.**, Է, 7:*

*6. Խոսքը Բյուզանդիայի Տիբերիոս I կայսեր (578-582) մասին է:*

*7. Ակնարկում է բյուզանդական նշանավոր զորավար Հովհաննես պատրիկին, որը 593 թ. նշանակվել է Արևմտյան Հայաստանի ընդհանուր կառավարիչ:*

*8. Խոսքը Բյուզանդիայի Մավրիկիանոս (Մորիկ) կայսեր (582-602) մասին է:*

*9. Տե՛ս **Առաք.**, Ը, 10:*

*10. Անանիա Շիրակացու սույն խոսքերն ուղղված են ժամանակի հետամնաց իրականության և իրեն հալածող տգետ հոգևորականների հասցեին:*

*11. **Հռոմ.**, ԺԲ, 19:*

*12. **Մատ.**, ԻԵ, 27:*

## ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑՈՒ ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

### ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

### *II. ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### *Գ. ԽՆԴՐԱԳԻՐՔԸ, էջ 54–61*

**Առաջին խնդիր:** – *Ես Հորիցս այսպես լսեցի. պարսիկների դեմ Հայերի մղած պատերազմի ժամանակ[1] մեծ քաջագործություններ է կատարվում Զորակ Կամսարականի կողմից[2], որպես թե մեկ ամսվա մեջ երեք անգամ Հարձակվում է պարսկական զորքերի վրա: Առաջին անգամ նա կոտորում է զորքի կեսը, Հետապնդելով՝ երկրորդ Հարձակման ժամանակ կոտորում է քառորդ մասը, երրորդ անգամ Հարձակվելիս՝ տասնմեկերորդը, իսկ մնացածները, թվով երկու Հարյուր ութսուն, փախչում են Նախիջևան:*

*Արդ՝ մնացածների Հաշվով մենք պարտավոր ենք իմանալ, թե կոտորածից առաջ որքա՞ն էր [պարսկական զորքը]:*

**Երկրորդ խնդիր:** – *Իմ մերձավոր մարդկանցից մեկը, մեկնելով Բահլ[3], չաՀավոր մարգարիտներ ձեռք բերեց: Տուն վերադառնալով և Հասնելով Գանձակ[4], նա մարգարիտների կեսը ծախեց Հատը Հիսուն դրամով, գալով Նախիջևան՝ վաճառեց քառորդ մասը՝ Հատը 70 դրամով, ապա Հասնելով Դվին՝ ծախեց տասներկուերորդ մասը՝ Հատը 50 դրամով: Երբ նա եկավ մեզ մոտ՝ Շիրակ, նրա մոտ մնացել էր ընդամենը 24 Հատ մարգարիտ:*

*Արդ՝ մնացածի Հաշվով իմացիր, թե ընդամենը քանի՞ մարգարիտ է եղել և քանի՞ դրամ էր մարգարիտների գինը:*

**Երրորդ խնդիր:** – *Ես [իմ] ուսուցչից լսեցի, թե գողերը մտնելով Մարկիանոս[5] [կայսեր] Տրիկլիի գանձարանը, գողացան գանձի կեսը և չորրորդ մասը: ԳանձապաՀները, ներս մտնելով, մնացածը գտան 421 կենդինար և 3600 դաՀեկան:*

*Արդ՝ իմացիր, թե ամբողջ գանձը որքա՞ն էր:*

**Չորրորդ խնդիր:** – *Սուրբ Սոփիայի[6] միաբանների ռոճիկը [բաժանվում է այսպես]. Հինգերորդ մասը ստանում են սարկավագները, տասներորդ մասը՝ քաՀանաները, 200 լիտր՝ եպիսկոպոսները և 2000 լիտր՝ մնացած միաբանները:*

*Արդ՝ իմացիր, թե ամբողջ ռոճիկը քանի՞ լիտր էր:*

**Հինգերորդ խնդիր: –** *Սպաների ռոճիկը բաշխվում է այսպես. քառորդ մասը տրվում է պատվավորներին, ութերորդ մասը՝ ավագներին, իսկ 150 կենդինարը՝ մյուս հեծյալներին:*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ կենդինար է:*

**Վեցերորդ խնդիր: –** *Իմ պարտեզում կար հազար[7]: Մի հռոմեացի, զբոսնելու նպատակով մտնելով այնտեղ, կերավ այդտեղ եղած հազարի հինգերորդ և տասնհինգերորդ մասը: Գիտենալով այդ մարդու որկրամոլությունը, ես նրան դուրս արեցի և, մտնելով պարտեզ, համրեցի և տեսա, որ պարտեզում կա 110 հատ հազար:*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ հազար է եղել, և հռոմեացին քանի՞սն է կերել:*

**Յոթերորդ խնդիր: –** *Ես Մարմետում էի[8], Կամսարականների ոստանում: Գնալով Ախուրյան կոչվող գետի ափը, տեսա ձկների վտառ, ուռկան գցել տվեցի, բռնեցի այդ ձկների կեսը, քառորդ և յոթերորդ մասը, իսկ որը ուռկանից ազատվեց, ընկավ թարփի մեջ, որի մեջ գտա 45 հատ:*

*Արդ՝ իմացիր, թե վտառի մեջ ընդամենը քանի՞ ձուկ կար:*

**Ութերորդ խնդիր: –** *Պարսիկների դեմ հայերի ապստամբած ժամանակ, երբ Զորակ Կամսարականը սպանեց Սուրենին, հայ ազնվականներից մեկը դեսպան ուղարկեց պարսից թագավորի մոտ՝ այդ գույժը նրան հաղորդելու: [Դեսպանը] գնում էր օրական 50 մղոն: 15 օր հետո, երբ Զորակ Կամսարականն այդ իմանում է, դեսպանին բռնելու համար նրա ետևից հետապնդողներ է ուղարկում, որոնք անցնում էին օրական 80 մղոն (ճանապարհ):*

*Արդ՝ իմացիր, թե նրանք քանի՞ օրում կհասնեին դեսպանին:*

**Իններորդ խնդիր: –** *Կամսարականները որսի էին դուրս եկել Գենում և որսացել էին երեներ, ինձ որսաբաժին բերել տվեցին մի վարազ: Քանի որ այն վիթխարի էր, ուստի ես կշռեցի: Պարզվեց, որ նրա փորոտիքն ամբողջ քաշի չորրորդ մասն էր, գլուխը՝ տասներորդ մասը, ոտքերը՝ քսաներորդ, ժանիքները՝ իննսուներորդ, իսկ մարմինը քաշում էր 212 լիտր:*

*Արդ՝ իմացիր, թե ամբողջ վարազը քանի՞ լիտր էր:*

**Տասներորդ խնդիր: –** *Մարմետի մոտ՝ Երասխ գետում մի լոքո բռնեցին: Ես կշռեցի այն: Պարզվեց, որ նրա գլուխը կազմում էր ամբողջ քաշի չորրորդ մասը, պոչը՝ վեցերորդ, իսկ մեջքը՝ 140 լիտր:*

*Արդ՝ իմացիր, թե ամբողջ ձուկը քանի՞ լիտր էր:*

**Տասնմեկերորդ խնդիր։** – *Մի վաճառական անցավ երեք քաղաքներով։ Առաջին քաղաքում նրանից մաքս վերցրին ունեցածի կեսը և երրորդ մասը, երկրորդ քաղաքում հաշվեցին ինչ որ ուներ, վերցրին մնացածի կեսը և երրորդ մասը, իսկ երրորդ քաղաքում դարձյալ հաշվեցին և վերցրին մնացածի կեսը և երրորդը։ Եվ երբ այդ մարդը տուն հասավ, նրա մոտ մնացել էր 11 դահեկան։*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ դահեկան ուներ։*

**Տասներկուերորդ խնդիր։** – *Մի նավակ էի ուզում սարքել, բայց ունեի ընդամենը երեք դրամ, ուրիշ ոչինչ չունեի։ Դիմեցի իմ մերձավորներին. «Տվեք ինձ ամեն մեկդ մի բան, որ կարողանամ սարքել նավակը»։ Նրանցից մեկը տվեց նավակի կշռի երրորդ մասի [արժեքը], մեկը՝ չորրորդի, մեկը՝ վեցերորդի, մեկը՝ յոթերորդի և մեկն էլ՝ քսանութերորդի։ Ես սարքեցի նավակը։*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ դահեկան (արժեքի) էր նավակը։*

**Տասներեքերորդ խնդիր։** – *Իմ աշակերտներից մեկը Խարա քաղաքից[10] ընտիր խնձորներ է գնում և ցանկանում է ինձ ընծա բերել։ Ճանապարհին նրան հանդիպում է կատակողների երեք խումբ։ Առաջին խումբը վերցնում է խնձորների կեսը և չորրորդը, երկրորդ խումբը՝ մնացածի կեսը և չորրորդը, երրորդ խումբը՝ նույնպես մնացածի կեսը և չորրորդը, իսկ մնացած խնձորները՝ հինգ հատ, բերում հասցնում է ինձ։*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ խնձոր է եղել։*

**Տասնչորսերորդ խնդիր։** – *Մի կարասի մեջ գինի կար, որ վարդով էին պատրաստել։ Եվ կար նաև երեք խեցե սափոր։ Ես հրամայեցի գինին լցնել այդ սափորների մեջ։ [Սափորներից] մեկը տարավ ամբողջ գինու երրորդ մասը, մեկը՝ վեցերորդ, իսկ մյուսը՝ տասնչորսերորդ մասը։ Մնացած գինին, որ այլ ամանների մեջ լցրին, 54 փաս էր։*

*Արդ՝ իմացիր, թե քանի՞ փաս էր ամբողջ գինին։*

**Տասնհինգերորդ խնդիր։** – *Ես ունեի մի ազնվացեղ ձի։ Այդ ձին վաճառելով՝ ստացած գումարի քառորդով կովեր գնեցի, յոթերորդով՝ այծեր, տասներորդով՝ եզներ, իսկ մնացած 318 դահեկանով գնեցի ոչխարներ։*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ դահեկան է անում։*

**Տասնվեցերորդ խնդիր։** – *Ես եկեղեցի էի կառուցում։ Վարձեցի մի*

*որմնադիր, որն օրական 140 քար էր շարում: Աշխատանքն սկսելուց 39 օր հետո վարձեցի մեկ ուրիշ որմնադիր, որն օրական 218 քար էր շարում: Երբ երկրորդ որմնադիրի շարած քարերի թիվը հավասարվեց առաջինին, եկեղեցու կառուցումն ավարտվեց:*

*Արդ՝ իմացիր, թե քանի՞ օրում հավասարվեց:*

**Տասնյոթերորդ խնդիր:** – *Ցորենով լի մի նավ էր գնում: Մի կետ հետապնդեց նրան: Նավորդները վախեցան և ցորենի կեսն իբրև կեր գցեցին նրան: Երկրորդ օրը գցեցին մնացած ցորենի հինգերորդ մասը, երրորդ օրը՝ ութերորդը, չորրորդ օրը՝ յոթերորդը: Նավահանգիստ հասան, մնացել էր ընդամենը 7200 (կայթ) ցորեն:*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ (կայթ) էր ցորենը:*

**Տասնութերորդ խնդիր:** – *Ես ունեի մի մետաղյա ջրաման, որը ջարդեցի և պատրաստեցի ուրիշ ամաններ: Երրորդ մասից պատրաստեցի մի սան, չորրորդ մասից՝ մի ուրիշ սան, հինգերորդ մասից՝ երկու բաժակ, վեցերորդից՝ երկու սկուտեղ, իսկ 210 դրամից՝ մեկ սկահակ:*

*Արդ՝ իմացիր, թե ի՞նչ քաշ ուներ մետաղյա ջրամանը:*

**Տասնիններորդ խնդիր:** – *Մի մարդ մտավ երեք եկեղեցի: Առաջին եկեղեցում Աստծուց հետևյալը խնդրեց. «Տուր ինձ այնքան, որքան ես ունեմ, և ես կտամ քեզ քսանհինգ դահեկան»: Այդպես խնդրեց նաև երկրորդում և տվեց քսանհինգ դահեկան, նույնը՝ նաև երրորդում, և նրա մոտ ոչինչ չմնաց:*

*Արդ՝ իմացիր, թե սկզբում նա քանի՞ դահեկան ուներ:*

**Քսաներորդ խնդիր:** – *Շիրակի և Արշարունիքի տեր Ներսեհ Կամսարականի որսատեղին գտնվում էր Արտին լեռան ստորոտում: Մի գիշեր այնտեղ են մտնում բազմաթիվ ցիռերի երամակներ: Ծառաները, որսալու փորձ չունենալով, վազում են Թալին գյուղը և պատմում այս մասին: Կամսարականն իր եղբայրների և ազնվականների հետ շտապում է որսատեղի: Սկսում են կոտորել երեներին: Նրանց կեսը բռնվում է թակարդով, քառորդ մասին նետահար են անում. մատաղ երեներին, որոնք ամբողջ տասներկուերորդ մասն էին կազմում, բռնում են ողջ-ողջ, իսկ 360 երե սպանվել էր նիզակով:*

*Արդ՝ իմացիր, թե ընդամենը քանի՞ հատ էին:*

**Քսանմեկերորդ խնդիր:** – *Արշավիրի որդի Ներսեհ Կամսարականը, որ այս Ներսեհի անվանակիցն ու նախահայրն էր, բահղլուճների*[12] *դեմ մղած պատերազմում, հաղթելով նրանց, մեծ թվով գերիներ է*

*վերցնում: Երբ հասնում է Արքունի դուռը, գերիների կեսը նվիրում է պարսից թագավորին[13], իսկ մնացած կեսի յոթերորդը՝ նրա որդուն: Ապա նրանց հրաժեշտ տալով՝ վերադառնում է իր երկիրը: Ճանապարհին գալով գարիկպետի[14] տուն՝ նրա կողմից անչափ մեծարվում է ոչ թե նախարարի, այլ թագավորի պատվասիրությամբ, և սա տալիս է նրան մնացած գերիների ութերորդը: Հետո գալիս է սպայապետի մոտ, որին Խորավարան էին կոչում, նրա կողմից ավելի ևս մեծարանքի արժանանալով՝ տալիս է մնացած գերիների տասնչորսերորդ մասը: Ավելի ևս առաջ գալով, հասնում է իր երկիրը: Նրան դիմավորելու է դուրս գալիս իր կրտսեր եղբայրը՝ Հրահատը, որին տալիս է մնացած գերիների տասներեքերորդ մասը: Ապա նրան դիմավորելու են գալիս հայ ազնվականներ, որոնց նվիրում է մնացած գերիների իններորդ մասը: Հասնելով Վաղարշապատ՝ մնացածի տասնվեցերորդ մասը տալիս է սուրբ եկեղեցիներին: Վերջապես՝ մնացած գերիների քսաներորդ մասն էլ տալիս է իր ավագ եղբորը՝ Սահակին: Եվ իրեն ընդամենը մնում է 570 մարդ:*

*Արդ՝ իմացիր, թե քանի՞ գերի է եղել:*

**Քսաներկուերորդ խնդիր:** — *Եգիպտոսի փարավոնը տոնում էր իր ծննդյան տարեդարձը: Նա սովորություն ուներ այդ օրն իր տասը նախարարներից յուրաքանչյուրին, ըստ նրա արժանիքի և տասնյակի աստիճանավորության՝ հարյուր կարաս խնկով համեմած գինի բաժանել:*

*Արդ՝ բաժանիր այդ գինին տասը նախարարների միջև՝ ըստ տասնյակի աստիճանավորության:*

**Քսաներեքերորդ խնդիր:** — *Կար մի շտեմարան, որի մեջ երկու հարյուր կայթ գարի կար: Մկները մտան և ամբողջ գարին կերան: Ես մկներից մեկին բռնեցի և պատժեցի: Նա խոստովանեց և ասաց. «Ինձ ութսուն հատիկ հասավ»:*

*Արդ՝ իմացիր, ընդամենը քանի՞ գարու հատիկ կար շտեմարանում և այդ հատիկներին ուտող մկների թիվը քանի՞սն էր:*

**Քսանչորսերորդ խնդիր:** — *Աթենք քաղաքում կար միաչափ մի ավազան, որ ուներ երեք ծորակ: Մի ծորակն, ավելի հորդ լինելով, ավազանները լցնում էր մեկ ժամում, երկրորդը, որ նրանից ավելի թույլ էր, ավազանները լցնում էր երկու ժամում, իսկ երրորդն՝ ամենից թույլ լինելով, լցնում էր երեք ժամում:*

*Արդ՝ իմացիր, թե երեք ծորակները միասին մեկ ժամի քանի՞երորդ մասի ընթացքում կլցնեն ավազանները:*

### *ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՈՒՄՆԵՐԸ*

**Առաջին խնդրի լուծումը:** *Կոտորածից առաջ 1760 հեծյալ կար:*

**Երկրորդ խնդրի լուծումը:** *Մարգարիտները 144 հատ էին եղել, իսկ մարգարիտների գինը՝ 6720 դրամ:*

**Երրորդ խնդրի լուծումը:** *Գանձը 1686 կենդինար է եղել:*

**Չորրորդ խնդրի լուծումը:** *Միաբանության ռոճիկը 3200 լիտր էր:*

**Հինգերորդ խնդրի լուծումը:** *Սպաների ռոճիկը 240 կենդինար էր:*

**Վեցերորդ խնդրի լուծումը:** *Հազարները եղել են 150 հատ:*

**Յոթերորդ խնդրի լուծումը:** *Ընդամենը 420 ձուկ է եղել:*

**Ութերորդ խնդրի լուծումը:** *Կհասնեին 25 օրում:*

**Իններորդ խնդրի լուծումը:** *Վարազը 360 լիտր է եղել:*

**Տասներորդ խնդրի լուծումը:** *Լոքոն 240 լիտր է եղել:*

**Տասնմեկերորդ խնդրի լուծումը:** *Վաճառականն ուներ 2376 դահեկան:*

**Տասներկուերորդ խնդրի լուծումը:** *Նավակը 42 դրամ արժեր:*

**Տասներեքերորդ խնդրի լուծումը:** *320 խնձոր է եղել:*

**Տասնչորսերորդ խնդրի լուծումը:** *Գինին 126 փաս էր:*

**Տասնհինգերորդ խնդրի լուծումը:** *Ձիու գինը եղել է 616 դահեկան:*

**Տասնվեցերորդ խնդրի լուծումը:** *Որմնադիրը հավասարվեց 70 օրում:*

**Տասնյոթերորդ խնդրի լուծումը:** *Նավում 24.000 կայթ հացահատիկ կար:*

**Տասնութերորդ խնդրի լուծումը:** *Մետաղյա ջրամանը եղել է 4200 դրամ:*

**Տասնիններորդ խնդրի լուծումը:** *Դահեկանների թիվը եղել է 21, կես, քառորդ, ութերորդ:*

**Քսաներորդ խնդրի լուծումը:** *Ընդամենը 2160 որսի կենդանի է եղել:*

**Քսանմեկերորդ խնդրի լուծումը:** *Գերիների թիվն ընդամենը եղել է 2240:*

**Քսաներկուերորդ խնդրի լուծումը:** *Առաջինն ստանում է մեկ կարաս և մեկ կարասի կեսը, հինգերորդի, տասներորդի և հիսունհինգերորդի չափ:*

*Երկրորդը ստանում է երեք կարաս և մեկ կարասի կեսի, տասներորդի, քառասուներորդի ու ութսունութերորդի չափ:*

*Երրորդը ստանում է հինգ կարաս և մեկ կարասի, երրորդի, տասնհինգերորդի, քառասունչորսերորդի, վաթսուներորդի և վաթսունվեցերորդի չափ:*

*Չորրորդն ստանում է յոթ կարաս և մեկ կարասի հինգերորդի, քսաներորդի և քառասունչորսերորդի չափ:*

*Հինգերորդը ստանում է ինը կարաս և մեկ կարասի տասնմեկերորդի չափ:*

*Վեցերորդը ստանում է տասը կարաս և մեկ կարասի կեսի, հինգերորդի, տասներորդի, քսաներկուերորդի, երեսուներորդի և երեսուներեքերորդի չափ:*

*Յոթերորդն ստանում է տասներկու կարաս և մեկ կարասի կեսի, տասներորդի, քսաներկուերորդի, երեսուներորդի, երեսուներեքերորդի և հիսունհինգերորդի չափ:*

*Ութերորդն ստանում է տասնչորս կարաս և մեկ կարասի երրորդի, տասներորդի, տասնհինգերորդի և քսաներկուերորդի չափ:*

*Իններորդն ստանում է տասնվեց կարաս և մեկ կարասի հինգերորդի, տասներորդի, քսաներկուերորդի, հիսունհինգերորդի չափ:*

*Տասներորդն ստանում է տասնութ կարաս և մեկ կարասի տասներկուերորդի, քսաներկուերորդի, երեսուներեքերորդի և քառասունչորսերորդի չափ:*

**Քսաներեքերորդ խնդրի լուծումը:** *Շտեմարանում եղել է ընդամենը 82.944.000 գարու հատիկ, իսկ գարի ուտող մկների թիվը եղել է 1.036.800:*

***Քսանչորսերորդ խնդրի լուծումը:*** *Միախառնված ծորակներն ավազանները կլցնեն մեկ ժամի քառորդ, վեցերորդ, տասներկուերորդ և քսաներկուերորդ մասում:*

*1. Ակնարկը վերաբերում է 571-572 թթ. հակապարսկական ապստամբությանը:*

*2. Զորակ Կամսարականն է 572 թ. փետրվարի 2-ին սպանել Հայաստանի մարզպան Սուրենին:*

*3.* ***Բահլ*** *– քաղաք Բակտրիայի երկրամասում:*

*4. Խոսքը վերաբերում է Ատրպատականի Գանձակ-Շահաստան քաղաքին:*

*5. Խոսքը վերաբերում է Բյուզանդիայի Մարկիանոս կայսրին (450-457):*

*6. Նկատի ունի Կոստանդնուպոլսի Ս. Սոփիա մայր տաճարին:*

*7.* ***Հազար*** *– զամբյուղավորների կարգին պատկանող բանջարաբույս:*

*8.* ***Մարմետ*** *– քաղաք Արշարունիք գավառում՝ Ախուրյան գետի ափին:*

*9.* ***Գեն*** *– Կամսարականների որսատեղին է, որ տեղադրվում է Ճակատք գավառում:*

*10. Քաղաք Սասանյան Պարսկաստանում:*

*11. Նույնանուն լեռը ժամանակակից Թալինից արևմուտք:*

*12.* ***Բահղուճներ*** *– Բահլ քաղաքի բնակիչներ:*

*13. Նկատի ունի Սասանյան Պերոզ թագավորին (457-484):*

*14. Այսինքն՝ արքունի պալատի կառավարիչ:*

*Գրում եմ ձեզ համար խրախճանականներ [զվարճալի խնդիրներ], որպեսզի դուք [օգտվեք նրանից], երբ կերուխումի ժամանակ զվարճանում եք և ցանկանում եք զվարճալի և ծիծաղելի մի բան ասել:*

**Առաջին խրախճանական:** *Ասա ընկերոջդ՝ «Ես կարող եմ իմանալ, թե դու որ ժամին ես ցանկանում ճաշել և քանի նվագ գինի ես ուզում խմել»: Եթե նա ասի քեզ, թե՝ «Իմացիր», ասա նրան. «Մտքումդ պահիր այն ժամերի քանակությունը, երբ ցանկանում ես ճաշել: Կրկնիր այն: Ավելացրու նրա վրա ևս հինգ: [Գումարը] բազմապատկիր հինգով: Նրա վրա ավելացրու տասը և տասով բազմապատկիր: Նրա վրա ավելացրու խմած գինին՝ քանի նվագում ուզում ես խմել»: Երբ նա կատարի քո ասածները, այն ժամանակ հարցրու նրան, թե որքան է հաշված թվերի գումարը: Եվ նա ինչ թվով որ ասելու լինի, նրանից միշտ դուրս հանիր 350, մնացած թվի մեջ տես, թե քանի հարյուրավոր կա, այն ժամին է լինելու նրա ճաշը, իսկ հարյուրից պակաս մնացած թիվն իմացիր, որ այդքան նվագ է նա գինի խմելու: Իսկ եթե ընկերդ անհմուտ մեկն է և գինի խմելու նվագը հարյուր լինի, պատասխանիր, որ անհնար է մի ժամում հարյուր նվագ գինի խմել:*

**Երկրորդ խրախճանական:** *Ասա ընկերոջդ, թե մի անգամ խնջույքի ժամանակ պարսիկ մի զբոսաշրջիկ տեսավ հույն մի խումբ զբոսաշրջիկների, ձայն տվեց նրանց և ասաց. «Եթե մեկը ձեզ ինձ տա, տա էլի ձեր չափ, ձեր կեսի չափ, ձեր քառորդի չափ և մեկն էլ ես ձեզ հետ՝ կլինեինք հարյուր հոգի: Արդ՝ իմացիր, թե հույն զբոսաշրջիկները քանի հոգի են եղել»: Եթե ընկերդ գիտուն մեկն է, չատ չուտ կիմանա, որ 36 հոգի են եղել, իսկ եթե տխմար է, ապա նրա չարչարանքն այդ ոչնչի չիմանալը, քեզ ուրախություն կպատճառի:*

**Երրորդ խրախճանական:** *Ասա ընկերոջդ, որ ես կարող եմ իմանալ, թե որքան դրամ կա քո քսակի մեջ: Եթե նա ասի՝ թե «իմացիր», ասա դու նրան, թե վերցրու դրամիդ քանակությունը, այդչափ էլ ավելացրու վրան, ստացած թիվը կրկնապատկիր, ավելացրու վրան առաջին վերցրած թիվը, ստացածդ գումարը կրկնապատկիր»: Երբ տվածդ հաշվումները կատարած լինի, անկախ նրանից, զույգ թիվ է եղել վերցրածը, թե՝ կենտ, ստացած գումարը, որ նա կասի, բաժանիր տասի վրա, և գտած թիվը կլինի քսակում եղած դրամի քանակը:*

**Չորրորդ խրախճանական:** *Ասա ընկերոջդ, թե մի հոն հարյուր տարի իմ հավապահն է եղել և օրական 100 ձու է կրել: Արդ՝ իմացիր,*

*թե ընդամենը որքա՞ն է: Եթե ընկերդ թվերից գլուխ հանող մեկն է, արագ կարող է ասել, թե 365 բյուր ձու է կրել, իսկ եթե տգետ է, ապա նրա չարչարանքը քեզ ուրախություն կպատճառի:*

**Հինգերորդ խրախճանական:** *Ասա ընկերոջդ. «Եթե դու վաճառես վաթսուն փարչ գինի, ամեն հինգ փարչը երկու դրամով, որքա՞ն դրամ դու կստանաս»: Նա կպատասխանի, թե 24 դրամ: Ասա դու նրան, որ եթե ես նույն գնով վաճառելու լինեմ 60 փարչ գինին, մի դրամ ավելի կշահեմ, քան դու: Կանես այսպես. 60-ը կբաժանես երկուսի, ստացած երեսունի ամեն մի երեք փարչը կբաժանես մեկ դրամի, իսկ մյուս երեսունի ամեն երկու փարչը՝ մեկ դրամի, որով լինում է դարձյալ հինգ փարչը՝ երկու դրամի: Եվ այսպես մեկ դրամ ավելի շահելով առաջին վաճառողին կամաչեցնես և դու կուրախանաս՝ նրա զարմանալով:*

## ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑՈՒ ՏԻԵԶԵՐԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ

### ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

### *III. ՏԻԵԶԵՐԱԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

### *Ա. ՏԻԵԶԵՐԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ*

### *3. ԵՐԿՐԻ ՄԱՍԻՆ, էջ 71-72*

*Երկրի մասին արտաքին բարի փիլիսոփաներից ոմանք ասում են, թե նա սկուտեղի ձև ունի: Ոմանք ասում են, թե գնդաձև է: Ուրիշները պնդում են, թե այն երկնքի մեջտեղում վեցանկյուն խորանարդի ձևով է կառուցված և ուժեղ հողմը մտնելով երկրի տակ, նրան վեր է բարձրացնում: Մանր ու ցանուցիր հողը խառնված է հեղուկ ջրի հետ: Եվ հողի այդ մասերը, շնորհիվ հողմի ուժի, որը փչում է դեպի վերև, ինչպես և թանձրաչերտ երկրի ծանրության, որը ձգտում է դեպի ներքև իջնել, կպչում են իրար և ճզմվելով կարծես մամլիչի մեջ, ջրի մանր կաթիլները վեր են բարձրացնում: Եվ երկրի զանգվածը խտանում է ջրի տակ, դառնում է սալահատակ, ամուր և անբաժանելի՝ վստահելի նեցուկ հանդիսանալով ջրի զանգվածի համար, որին և մենք ծով ենք անվանում:*

*Եվ քանի որ երկիրն ամբողջությամբ կառուցված է երկնքի մեջտեղում, ուստի երկինքն իր արագ պտույտով թույլ չի տալիս նրան ցած իջնել դեպի ներքին կիսագունդը: Եվ որովհետև երկիրն իր ծանրու-*



*Էջմիածնի Ավետարանի փղոսկրյա կազմը (VI դար)*

*թյամբ ձգտում է ներքև իջնել, իսկ հողմն իր ուժգնությամբ աշխատում է նրան վեր բարձրացնել, ուստի ոչ երկրի ծանրությունն է թույլ տալիս նրան վեր բարձրացնել և ոչ քամու ուժն է թույլ տալիս ցած իջնել: Եվ այսպես նա մնում է հավասարակշիռ կետում:*

*Այդ երկու հակադիր ուժերի սահմանակետը գտնվում է երկրի տրամագծի կենտրոնի վրա: Այս կետից չորս ուղղությամբ գնացող տրամագծերն ուղղահայաց են: Այս փոխադարձ մասերի՝ տրամագծի միջին մասի նկատմամբ ունեցած ձգողականության շնորհիվ, բոլոր հարթ, հավասար մասերը հավասարակշռված ու անվնաս են պահում երկրի լեռնային, հարթավայրային և ծովային մասերը: Այս ամենը, անկասկած, շնորհիվ աստվածային տնօրինության է գոյություն առել:*

*Եթե որևէ մեկը կամենա երկրի դիրքը պատկերացնելու համար հեթանոս գիտնականներից ակնառու օրինակ ստանալ, ինձ թվում է, հարմարավոր օրինակը ձուն է. ինչպես որ նրա դեղնուցը գնդաձև գտնվում է մեջտեղում, սպիտակուցը նրա շուրջն է, իսկ կճեպը շրջապատում է չորս կողմից, ճիշտ այդպես էլ երկիրը գտնվում է մեջտեղում, օդը՝ նրա շուրջը, իսկ երկինքը շրջապատում է չորս կողմից: Դարձյալ եթե մեկը վերցնի խեցեղեն աման և նրա մեջ լցնի ջուր, ձեթ և ավազ, ապա պարզ կդառնա, որ ավազը կնստի ամանի տակը, ձեթը կբարձրանա վերև, իսկ ջուրն անհրաժեշտաբար կմնա մեջտեղում, իսկ ամանը իր մեջ կառնի այդ ամենը: Եվ եթե տարրերն ունեն այսպիսի ակնառու նմանություն, կապված իրերի հետ, որքա՞ն ևս ավելի չափով Արարիչը պիտի կամենար, որ իր ստեղծագործությունները նույնպես հորինված լինեն բնականորեն օրինաչափված:*

## *Դ. ԵՐԿՆԱՅԻՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ՄԱՍԻՆ, էջ 121-126*
## *2. ԻՆՉ ԲԱՆ ԵՆ ԱՆՁՐԵՎՆԵՐԸ*

*Մարդկային միտքը հասու չէ թափանցելու աստվածային իմաստության խորքերը, բայց [այն գիտնականները], որոնք ուսմամբ հմտանում են երկրի ուսումնասիրության գործում, չնորհիվ երեք միջոցի՝ շրջելու, տեսնելու և լսելու, կամեցան բոլորովին անհասու չթողնել արարածներին: Եվ նրանք պարզել են, որ հսկա ծովը պատում է երկրի շուրջբոլորը: [Այն] ծավալվելով շատ տեղեր և կողմեր՝ արևելքում, արևմուտքում, հյուսիսում և հարավում, ծոցերի և խորշերի մեջ լցվելով՝ ծովացել է, և որպես անջրպետներ կղզիներ են մնացել չորս կողմերում, որտեղ գտնվում են բազում երկրներ: Ոմանք նրան [այսինքն՝ զանգվածին] անվանում են Ատլանտիկա, իսկ ուրիշները՝ Օվկիանոս:*

*Եվ ինչ փոփոխություններ տեղի են ունենում երկրի վրա հողմերից, և ինչ կարգի տեսակ-տեսակ ցավեր ու ապաքինում է, այնտեղից է լինում: Բոլոր երկրներում տեղի է ունենում գոլորշիացում, որը և՛ օգուտ է բերում, և՛ վնաս: Երկու տեսակի գոլորշիներ հաճախ և անընդմեջ երկրից օդ են բարձրանում, որոնք շատ նուրբ են և աչքով՝ անտեսանելի: Թվում է, թե (այդ գոլորշիացումը) մեծ է լինում արևելքում: Գոլորշիացումներ լինում են նաև գետերի և աղբյուրների ջրերից:*

*Ինձ այսպիսի նմանություն են հիշեցնում. մեկը չոր է, ծխանման, և այն առաջանում է [տաք] քամիների հետևանքով: Մյուսը խոնավ է, թանձրամած և գետին է թափվում խոնավության գերհագեցվածության հետևանքով: Նրանից են առաջանում մշուշը և սառնամանիքները, ամպերը և անձրևները, ձյունը և կարկուտը: Իսկ չոգից [առաջանում են] տեսակ-տեսակ հողմեր, որոտ, կայծակ, չանթ, հուր և սրանց նման բաներ:*

## *4. ՈՐՈՏՄԱՆ ՄԱՍԻՆ՝ ԹԵ ԻՆՉ Է ՆԱ ԵՎ ԻՆՉԻՑ Է ԱՌԱՋԱՆՈՒՄ*

*Որոտը լինում է այն ժամանակ, երբ քամիները գտնվելով շարժման մեջ, վերին [կրակի կամարի] հարկադրանքի տակ, ընկնում են ամպերի շրջափակման մեջ և վիթխարի ուժով ճեղքում են այն: Այստեղից էլ առաջանում են փայլատակումը և որոտը: Եվ հողմի ճնշման տակ հուր է ցայտում, որ կոչվում է փայլակ: Բոլոր տեսակի գոյացություններն իրենց մեջ կրակ ունեն, սակայն ամպինն ավելի ուժգին է: Երբ ճեղքում է ամպը, եթե թեթև անձրև է տեղում, ներքևի օդը տեղա-*

*փոխվում է (վերև), իսկ եթե ուժեղ է լինում և հանդիպում է մեկին՝ վնասում է: Եթե թույլ է լինում, օդն արգելակում է (կրակի շարժումը) և երկինքը վնասազերծում: Ձմռան ժամանակ այդ տեղի չի ունենում, որովհետև ամպերը նոսրացած են լինում հյուսիսային քամիներից. ամպերը խտանում են հարավային քամուց:*

### *5. ՁՅԱՆ ՄԱՍԻՆ*

*Ձյունը լինում է այն ժամանակ, երբ Արեգակը թեքվում է դեպի հարավ, և ուժեղանում է հյուսիսային քամին, օդի թանձր շերտերը, խառնվելով իրար, ավելի են խտացնում օդը: Այդ խոնավությունը գետին է թափվում խտացած [սառած] կտորներով՝ (ցրտության պատճառով)՝ չկարողանալով վերածվել ջրի: Սառը քամին թույլ չի տալիս վերածվել հեղուկ ջրի: Երբ [ջուրը] առատորեն ներքև է թափվում, կոչվում է տեղատարափ [անձրև], մինչ [ջրի կաթիլները] կարծրացած վիճակում գտնվելիս կոչվում են ձյուն:*

### *6. ԿԱՐԿՈՒՏԻ ՄԱՍԻՆ*

*Կարկուտն առաջանում է քամիներից. հյուսիսային հողմը թանձր ամպերը վեր է բարձրացնում, ցրտի պատճառով ոլորում, կլորում, գետին է թափում, որից և առաջանում է շաչյուն. պատահում է, որ այդ ուժեղ է լինում, պատահում է՝ թույլ: [Կարկուտը] այլ բանից չէ, բայց եթե երկրի գոլորշուց, որը [բարձրանում է] գետնից, աղբյուրներից կամ ծովերից, ինչպես սահմանել է աստվածային իմաստությունը, որի համար անկարելի ոչինչ չկա. նրա ակնարկելով է առաջացել ամեն ինչ, որին ոչ ոք ստուգապես հասու լինել չի կարող:*

### *7. ՔԱՄԻՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ*

*Երբ քամիները բարեխառն են լինում, անվանում ենք զով զեփյուռ: Զեփյուռները սովորաբար մի քանի տեսակ են լինում. այն քամին, որը փչում է խոնավ վայրերից, կոչվում է երկրային [զեփյուռ], այն քամին, որը փչում է հովիտներից, կոչվում է հովտային [զեփյուռ] , իսկ այն քամին, որը գետերից, աղբյուրներից և ծովերից է սկիզբ առնում, կոչվում է ջրային [զեփյուռ]:*

*Արևելյան [քամիները] ձմեռ ժամանակ հաճախ են լինում, իսկ*

*արեմտյանը՝ ամառ ժամանակ: Հարավայինը լինում է [գարնանային և աշնանային] գիշերահավասարների ժամանակ: Բայց պատահում է, որ գարնանը, աշնանը և ձմռանը լինում են այլ տեսակի քամիներ ևս: Սրանց մեջ կան այնպիսիները, որոնք փչում են ուղղահայաց և կան այնպիսիները, որոնք փչում են ոլորապտույտ: Երբ քամիները շատ ուժեղ են, կոչում ենք մրրիկ: Սրանք հանկարծակի վերից վար են խուժում և լեռները ծածկում մառախուղով:*

## *10. ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԲՆՈՒՅԹԻ ՄԱՍԻՆ*

*Աղբյուրների բնույթը հետևյալն է. ամռան ժամանակ Արեգակը բարձրանում է վեր և հյուսիսային օդը մղում դեպի երկնքի ստորին շերտը: [Վերջինս] իր ցրտությունը երկնքից ցած է բերում, որով զովացնում է վեր բխող աղբյուրների ջուրը: Եվ Արեգակը հարավ իջնելով, երկրի վրա գտնված ժամանակ, տաքացնում է ներքին ջրամբարները: Հարավային [օդը] ազդում է երկրի ստորին շերտի վրա, որովհետև հյուսիսայինը նրա զորությամբ է տրվում:*

*Ճիշտ երկրի ձևով էլ կազմված է նաև մարդու բնույթը. ձմռան ժամանակ մարդու որովայնը տաք է լինում, և կերակուրը դյուրամարս է դառնում, իսկ մարմինը դրսից սառն է երևում: Բայց ամռանը մարմինը դրսից տաք է երևում, իսկ ներսից՝ ցուրտ: Այսպես են պատմում իմաստուն բժիշկները. այսպես են ասել Ասկլիպիդեսի և Հիպոկրատի ուսման հմուտները:*

## *11. ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ՄԱՍԻՆ՝ ԹԵ ԻՆՉ ՊԱՏՃԱՌՈՎ Է ԼԻՆՈՒՄ*

*Երկրաշարժն առաջանում է հողմերից. լինում են հողմեր, որ մեծ խորության մեջ գետնի տակ են մտնում ու չեն կարողանում երկիրը շարժել, այլ միայն դղրդյուն են առաջացնում երկրի շուրջը: Սակայն լինում են ուժեղ [հողմեր], որոնք նույնպես չեն կարողանում շարժել երկիրը՝ [նրա շերտի հաստության պատճառով], բայց եթե նրանք իրենց ուժգին զորությամբ ելք են գտնում դեպի վեր, խորտակում են շատ քաղաքներ և ավերում շինություններ:*

*Լինում է նաև, որ այդ հողմերը, դուրս գալու ելք չգտնելով, սոսկալի դղրդյուն են բարձրացնում և շարժում երկիրը: Բայց հողմերն ամբողջ երկիրը շարժել չեն կարող, այլ միայն՝ տեղ-տեղ, ժամանակ առ ժամանակ, այլևայլ կողմերում ու տարբեր ձևերով՝ երբեմն ուժեղ, երբեմն՝ թույլ:*

## *12. ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ Է ԱՐԻՍՏՈՏԵԼՆ ԱՊԱՑՈՒՑՈՒՄ, ՈՐ ՏԱՐԵՐՔԻ ՇԱՐԺՈՂՆ ԱՍՏՎԱԾ Է*

*Եթե գոյություն ունի շարժում, ապա պետք է, որ լինի մի այլ ուժ, որը շարժում է նրան: Եվ եթե կա այդպիսի ուժ, որը շարժում է նրան, խնդրակա՞ն է, թե այն ինքնաշա՞րժ է, թե՞ [ուրիշ մեկի միջոցով] շարժվող: Եթե մեկն ասի, որ շարժման պատճառը հինգերորդ էությունն է, այն դեպքում պետք է գտնվի անընդմեջ ու մշտական շրջապտույտի մեջ, ուստի մշտաշարժ է: Ըստ որում, նա իր մշտական շարժունակությունն ստանում է մի այլ՝ հարկադրական ուժից: Եվ եթե կա այդպիսի մի գոյակ, որը շարժում է հսկայական մշտաշարժ այդ տարերքը, ապա անհրաժեշտ է, որ այն շարժողն ինքն անշարժ լինի, անհեղհեղուկ, անփոփոխ և անշարժ լինելը նրա զորությունն է: Եվ եթե կա անհողդողդ և վնասի ու ազդեցության չենթարկվող [այդպիսի] մի ուժ՝ որ իր մեջ ներքին այդ զորությունն է կրում, ապա նա է Աստվածը՝ ամեն ինչի Արարիչն ու շարժողը:*

# V-VIII ԴԱՐԵՐԻ ՀԱՅ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

## ա. ԱՐՁԱԿ. ԸՆՏԻՐ ՀԱՏՎԱԾՆԵՐ

### *Ե Ղ Ի Շ Ե*

### ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՓԱՓԿԱՍՈՒՆ ՏԻԿԻՆՆԵՐԸ

ՎԱՐԴԱՆԻ ԵՎ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

**Յոթերորդ եղանակ**

*Հայոց աշխարհի փափկասուն տիկինները, որոնք փափուկ կյանքով ու քնքուշ մեծացել էին բազմոցների ու գահավորակների մեջ. շարունակ բոբիկ ու ոտքով էին գնում աղոթատները, առանց ձանձրանալու ուխտելով և խնդրելով, որ կարողանան դիմանալ այն մեծ նեղությանը: Ովքեր իրենց մանկությունից հորթերի ուղեղներով և էրեների փափուկ մսով էին սնվել, մեծ ուրախությամբ խոտեղեն կերակուր էին ընդունում վայրենիների նման և ամենևին չէին հիշում իրենց սովորական փափուկ կյանքը: Նրանց մարմինների մորթը սև գույն ստացավ, որովհետև ցերեկն արևակեզ էին լինում և ամբողջ գիշերներն էլ գետնի վրա էին քնում:*

*Մշտական սաղմոսներն էին նրանց բերանների մրմունջները, իսկ*

*կատարյալ մխիթարությունը մարգարեների [գրքերի] ընթերցումն էր: Երկու-երկու միաբանվեցին իբրև իրար համաձայն ու հավասար ամոլներ՝ ուղիղ տանելով արքայության ակոսը, որպեսզի առանց վրիպելու հասնեն խաղաղության նավահանգիստը:*

*Մոռացան իրենց կանացի տկարությունը և առաքինի տղամարդիկ դարձան հոգևոր պատերազմի մեջ. կռիվ բաց արին ու մարտնչեցին ծայրագույն մեղքերի դեմ, կտրեցին և դեն գցեցին նրա մահաբեր արմատները: Միամտությամբ հաղթեցին խորամանկությանը և սուրբ սիրով լվացին նախանձի կապտագույն ներկվածքը. կտրեցին ագահության արմատները և չորացան նրանց ոստերի մահաբեր պտուղները: Խոնարհությամբ հաղթահարեցին ամբարտավանությունը և միևնույն խոնարհությամբ հասան երկնավոր բարձրությանը: Աղոթքով բաց արին երկնքի փակված դռները և սուրբ խնդրվածքներով հրեշտակներին ցած բերին փրկության համար. ավետիս լսեցին հեռաստանից և փառավորեցին Աստծուն բարձունքում:*

## *ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ*

## ԵՐԵՎԵԼԻ ԳԱՎԱՌՆ ԱՅՐԱՐԱՏՅԱՆ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### *Դրվագ Ա*

***Գլ. Է.*** *Հոյակապ, հռչակավոր, երևելի գավառն Այրարատյան, որն ամեն ինչ բուսցնող է, ամեն ինչ տվող, ամեն ինչով լի, մարդկային կյանքին, վայելքին ու երջանկությանն անհրաժեշտ օգտի ու դեղի համար ամեն ինչ ունեցող՝ դաշտեր լայնատարած ու որսալից, չուրջ բոլորը լեռներ գեղեցկանիստ ու փարթամ արոտներով ծածկված, կճղակաբաշխ ու որոճող անասուններով և նրանց հետ էլի ուրիշ բազմատեսակ կենդանիներով լեցուն: Լերանց բարձր կատարներից ջրեր են հոսում՝ լիուլի ոռոգմամբ արբեցնելով դաշտերը, որոնք անթիվ կին ու տղամարդ բնակչությամբ փարթամացած ոստանն են մատակարարում առատ հացով և գինով, անուշաբույր ու մեղրահամ բանջարեղենով և յուղատու զանազան սերմերով: Իսկ թե հայացքդ առաջին անգամ ես դարձնում դեպի լեռնափեշերը կամ սարահարթները, ապա նրանց վրա սփռվածը հանդերձնե՛ր կկարծես և ո՛չ թե ծաղկաբույս երանգներ՝ տարածված փարթամորեն, անուշահամ ու պարարտ արոտներ, որոնց թանձրախիտ աճած խոտերն արոտական*

*ընտանի անթիվ էշերին ու վայրի կատաղի կենդանիների խմբերին հագեցնելով՝ նրանց գիրացնում են, գավակները պարարտացնում, ճարպակալած մարմինները տողեցնում: Իսկ անուշահոտ ծաղկանց բույրերը, որ քաջ նետաձիգ ու որսասեր տղամարդկանց և բացօթյա ապրող հովիվներին պարգևում են առողջություն, զորացնում են մտքի զգայությունը և թարմացնում: Այնտեղ կան նաև տեսակ-տեսակ բույսերի արմատներ՝ դեղերի համար պիտանի ու օգտակար, որոնք ըստ ճարտարագետ ու հմուտ բժիշկների երկասիրությունների ճարտարագետ ճանաչողության՝ ախտերն արագորեն բուժում են իբրև սպեղանի և ցավերի մեջ երկար տառապածներին պարգևում առողջություն:*

*Իսկ ամեն ինչով լի դաշտերն աշխատավորներին, ասես հմայիչ խոսքով, դեպի իրենց են քաշում և նրանց լիացնում ինչ-որ բարիքով, առավել փութացնում վերջնական դարձը դեպի իրենց: Նրանք ո՛չ միայն տեսանելիով են ցույց տալիս իրենց շահավետությունն ու օգտակարությունը մարդկանց, այլև հմտորեն խուզարկող աշխատավորներին ցույց են տալիս երկրի տակ ծածկված գանձերը, որպեսզի նրանք հավաքեն ի շահ իրենց, ի վայելումն այս աշխարհի թագավորական մեծությունների և ի հաստատություն հարկահանների: Եվ այդ գանձերն են ոսկին ու պղինձը, երկաթն ու պատվական քարերը, որոնք ընկնելով արհեստավորների ձեռքը, թագավորներին զուգում են գեղեցկատեսիլ զարդերով ու բանվածքներով, ինչպիսին են խույրերի, թագերի ու հանդերձների վրա ընդելուզված ոսկեհուռ պաճուճանքները: Այլև լուծելով ջրերի մեջ, բնական մի առանձին անուշություն են հաղորդում ամեն տեսակ խորտիկներին: Բայց ամենաբաղձալի դաշտն Այրարատյան իր վրա զուր տեղը չի սնում եղեգնաձև բույսերի արմատները: Չէ՞ որ նրանցից ծնված որդերն էլ կարմրափայլ զարդերի գույներ են տալիս՝ օգտասերներին ընծայելով շահ ու չքեղություն: Իսկ գետերի ընթա՛ցքը՝ բազմատեսակ մեծամեծ ու մանր, տարբեր համի ու տեսքի ձկներով: Ուրախացնելով լցնում է հարստության շնորհները և հագուրդ է տալիս ժրաջան ու անդանդաղ աշխատողների որովայներին:*

*Երկիրը, հուրախություն և ի զվարճություն որսատենչ ազատների, իր մեջ անապական ջրերով սնում է բազմատեսակ թռչուններ՝ կաղկաղող ու քաղցրաձայն, առապարասեր, վիմասույզ ու ծակամուտ կաքավների ու սալամբների երամներ, և կամ եղեգնաբնակ, թփերում ու մացառներում թաք կացող պարարտամարմին, անուշահամ վայրի տեսակն աքարների, այլև ջրասուզակ, մամռասեր, խոզակեր մեծա-*

*մարմին թռչուններ, փորը, թանձրն ու սագը և այլազան, անթիվ-անհամար ցամաքային ու ջրային թռչունների բազմություններ: Իսկ նախարարների գունդը, ազատների որդիների հետ, թակարդների շրջափակությամբ, երագազինք-ուռկաններով, հատուկ կողովներով, որսի էին ելնում: Ոմանք ցիռերի ու այծյամների ետևից արշավելով՝ իրենց աղեղների մասին էին հորդորալից բարբառում: Ուրիշները, եղջերուների ու եղնիկների հոտերի ետևից ձիարձակ սլանալով, կորովաձիգ տղամարդկանց արիությունն էին ցույց տալիս: Մնացածներն էլ սուսերով, մենամարտիկների պես, վարազների երամակն էին գետին տապալում, կոտորում: Եվ նախարարազուն շատ մանուկներն էլ, դաստիարակների ու ծառաների հետ, բազեներով տարատեսակ թռչուններ որսած, դարձյալ բերում էին, ճոխացնում ուրախության ընթրիքները: Եվ այսպես, յուրաքանչյուրը, որսով լիացած, գնո՜ւմ էր երջանիկ:*

*Ջրասուզակ ձկնորսների մանուկներն էլ, ըստ իրենց հանապազորյա սովորության, քայլելով նախարարազունդ խմբի առջևից, բերում, իշխաններին ընծա էին մատուցում որսած ձկներից, գետի կղզյակներից բռնած վայրի թռչունների ձագեր կամ հավաքած ձվեր էին տալիս: Իսկ նախարարները, ընծայածների մասն ընդունելով հոժարությամբ, իրենք էլ նրանց էին առավել շատ պարգևում իրենց ունեցածներից: Եվ ամենայն բարիքներով լի՝ հասնելով իրենց ապարանքները, տանը մնացած աշխատավորներին, առավել ևս՝ օտարներին, պարգևում էին կենդանի բերած, անբիծ որսերը: Տեսնելի՜ են այս բոլորի ընթրիքների սեղանները. իրար վրա չեղջակույտ արած բազում էրենե՜րը, նրանց առջև դարսված գլուխնե՜րը: Դրանցով ուրախացած խնդում էին ձկնակեր ու մսակեր մարդիկ, բայց անուշ խորտիկներից առավել ուրախանում էին հոգևո՛ր կերակուրներով, սաղմոսներով ու մարգարեական երգերով օրհնում էին պարգևատու, ամեն բարիքներով աշխարհը լցնող Քրիստոսին:*

### ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹԸ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

***Դավիթ Անհաղթը (մոտ 475–550) ոչ միայն հայ, այլև համաշխարհային փիլիսոփայական մտքի ականավոր ներկայացուցիչներից է: Ծնվել է Տարոնո աշխարհի Ներգին գյուղում: Սկզբնական կրթությունն ստացել է ծննդավայրում, այնուհետև սովորել Ալեքսանդրիայի Օլիմպիոդորոս Կրտսերի իմաստասիրական դպրոցում: Հեղինակ է «Սահմանք իմաստասիրութեան», «Մեկնութիւն ի «Վերլու-***

***ծական» Արիստոտէլի», «Մեկնութիւն «Ստորոգութեանցն» Արիստոտէլի» և այլ փիլիսոփայական երկասիրությունների:***

***Հայ իրականության մեջ Դավիթ Անհաղթը հանդիսացել է փիլիսոփայական բազմաթիվ մասնաճյուղերի՝ տրամաբանության, բարոյագիտության և իմացաբանության հիմնադիրը:***

***Դավիթ Անհաղթի բազմաժանր ժառանգությունից ստորև տրվող հատվածը բերվում է նրա «Փիլիսոփայության սահմանումները» երկասիրությունից, որը լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարի համար Ս. Ս. Արևշատյանի կատարած թարգմանությամբ (Երևան, 1980):***

## ԵՌԱՄԵԾ ԵՎ ԱՆՀԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱ ԴԱՎԹԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՍԱՀՄԱՆՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ՝ ՈՒՂՂՎԱԾ ՊԻՀՌՈՆ ԻՄԱՍՏԱԿԻ[1] ՉՈՐՍ ԴՐՈՒՅԹՆԵՐԻ ԴԵՄ

*Ամեն մի գիտելիք ձեռք է բերվում զգայության միջոցով. այդ նկատի ունի Պլատոնը, երբ ասում է, որ Արարիչը շնորհեց մեզ տեսողություն և լսողություն, որպեսզի դրանց օգնությամբ մենք զբաղվենք փիլիսոփայությամբ: Փիլիսոփայությունը բաժանվում է տեսականի և գործնականի: Տեսական փիլիսոփայությունն էլ իր հերթին բաժանվում է բնագիտության, մաթեմատիկայի և աստվածաբանության: Եվ եթե փիլիսոփայության գոյության ժխտողների առաջարկությամբ մենք վերացնում ենք այս մասերը, ապա պարզ է, որ վերանում է և փիլիսոփայությունը, որովհետև երբ չկան մասերը, չի կարող գոյություն ունենալ նաև ամբողջը:*

*Ասում են, թե մաթեմատիկան փիլիսոփայության մասը չէ. այդ կարծիքին է և Պլատոնը, որովհետև նա ևս չի համարում մաթեմատիկան փիլիսոփայության մաս, այլ նախակրթություն, ինչպես և քերականությունն ու ճարտասանությունը: Այդ պատճառով նա իր համալսարանի ճակատին դրել էր այսպիսի մակագիր՝ «Երկրաչափություն չիմացողը թո՛ղ չմտնի»: Իսկ բնագիտության մասին նրանք ասում են, թե վերացնում են այն երկրորդ փաստարկի միջոցով, որի համաձայն բոլոր գոյերը գտնվում են հոսման և ծորման մեջ և երբեք դադարի չեն հասնում: Իսկ աստվածաբանությունը նրանք վերացնում են այսպես. աստվածայինը երբեք ենթակա չէ ոչ զգայական ընկալման, ոչ էլ [բանական] իմացման, ապա ուրեմն նաև աստվածային իրողությունններն անիմանալի են:*



Դավիթ Անհաղթ
(գործ՝ Հր. Ռուխկյանի)

Դրան մենք պատասխանում ենք այսպես. դուք տակավին ոչինչ չեք ասում գործնական փիլիսոփայության դեմ, որն ընդդիմաբաժանվում է տեսականի հետ: Այստեղից պարզ է դառնում, որ նրանք չեն վերացնում փիլիսոփայությունն ամբողջությամբ, որովհետև գործնականն էլ փիլիսոփայության մասն է: Պլատոնն ասում էր, թե փիլիսոփա է անվանվում ոչ թե նրան, որը շատ բան գիտե, և ոչ էլ նրան, որ կարող է շատ բաների մասին խոսել, այլ նրան, ով անբիծ ու անարատ կյանք է վարում, որը հենց գործնական իմաստասիրությունն է:

Բայց եկեք պատասխան տանք նաև մաթեմատիկայի, բնագիտության և աստվածաբանության վերաբերյալ: Մաթեմատիկայի մասին պետք է ասենք, որ Պլատոնը չի կարծում, թե այն փիլիսոփայության մասը չէ, այլ միայն որ այն բարձրագույն փիլիսոփայության, այսինքն՝ աստվածաբանության մասը չէ, որովհետև չի ընդունում նրա՝ բարձրագույն փիլիսոփայության մաս լինելը: Իսկ այն, որ նա մաթեմատիկան համարում է փիլիսոփայության մաս, ցույց է տալիս նրանով, որ այն անվանում է մակացություն[2]: Արդ, եթե այն մակացություն է, պարզ է, որ այն փիլիսոփայության մաս է: Իսկ Արիստոտելը մաթեմատիկան բացահայտորեն անվանում է փիլիսոփայության մաս: Իսկ բնագիտության մասին մենք արտահայտվեցինք, երբ հերքում էինք երկրորդ փաստարկը, որի համաձայն բոլոր գոյերը գտնվում են հոսման և ծորման մեջ: Իսկ աստվածաբանության մասին մենք ասում ենք, որ թեպետ և աստվածայինն ինքն ըստ ինքյան անճանաչելի է, սակայն նայելով նրա ստեղծագործություններին և արարածներին, ինչպես նաև աշխարհի կարգավորված շարժումը, մենք մտածողության և մտահայեցողության միջոցով հասու ենք լինում Արարչին: Անտեսանելին հեշտությամբ ճանաչվում է այն բանի միջոցով, ինչը տեսանելի է:

*1. **Պիհոն Իմաստակ** (Պիհոն Էլիդացի, Ք. ա. 365-275) - Հին հունական փիլիսոփայության մեջ կասկածամտական (սկեպտիկական) ուղղության հիմնադիրը:*
*2. **Մակացություն** - այսինքն՝ գիտություն:*

## ՍՄԲԱՏ ԲԱԳՐԱՏՈՒՆՈՒ ԳԱԶԱՆԱՄԱՐՏՆ ԸՍՏ ՍԵԲԵՈՍԻ

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

*__Գլ. Ի.__ Կայսերական հրովարտակներով արքունական դեսպանները Հասան և Սմբատին ուրիշ յոթ մարդկանց հետ միասին բռնեցին, տարան թագավորի մոտ: Եվ բազմամբոխ հրապարակում քննելուց հետո նրանց մասին վճիռ կայացվեց՝ մերկացնել և գցել գազանամարտի:*

*Սմբատը հաղթանդամ այր էր՝ գեղեցիկ տեսքով, բարձրահասակ ու լայնալանջ, ուժեղ ու ջղուտ մարմնով: Անձնյա էր ու պատերազմող և շատ պատերազմներում էր ցույց տվել իր քաջությունն ու զորությունը: Ահա նրա զորությունը. երբ սա ամեհի ու հզոր երիվարի վրա անցնում էր խիտ անտառով և զորավոր ծառերի տակով, ձգվելով բռնում էր ծառի ճյուղից և ազդրերով ու ոտքերով ամուր գրկելով երիվարի մեջքը՝ ազդրերով բարձրացնում էր գետնից, մինչև որ ամբողջ զորքը տեսնելով զարմանքից ահաբեկվում էր:*

*Եվ արդ՝ մերկացնելով նրան և վարտիք հագցնելով՝ գցեցին գազանամարտի, որ կեր դառնա գազաններին:*

*Եվ նրա վրա արձակեցին մի արջ: Եվ եղավ՝ երբ արջը հարձակվեց նրա վրա, նա բարձրագոչ աղաղակեց և ընթացավ արջի վրա ու իր բռունցքով խփեց ճակատին և տեղնուտեղը սպանեց նրան:*

*Երկրորդ անգամ նրա վրա արձակեցին ցուլ: Իսկ նա բռնեց ցլի եղջյուրներից... Երբ ցուլը մարտում հոգնեց, Սմբատը ցուլի վիզը ոլորեց և ջարդեց գլխի երկու եղջյուրները. ցուլը թուլացավ և հետ-հետ գնալով՝ փախավ: Իսկ նա հետապնդելով՝ բռնեց ցլի պոչն ու մի ոտքի կճղակը և պոկեց կճղակը, [որը] մնաց իր ձեռքին: Եվ ցուլը Սմբատից փախավ գնաց՝ մի ոտքն անկճղակ:*

*Երրորդ անգամ նրա վրա առյուծ արձակեցին: Եվ եղավ՝ երբ առյուծը հարձակվեց նրա վրա, Տիրոջ կողմից նրան այնպես հաջողվեց, որ բռնելով առյուծի ականջից՝ հեծավ նրան: Եվ խիկույն բռնելով չնչափողից՝ խեղդեց առյուծին ու սպանեց: Կրկեսը լցվեց բազմամարդ ամբոխի աղաղակով. նրա համար ներում էին խնդրում թագավորից:*

*Մարտում հոգնած՝ նա նստեց սպանված առյուծի վրա, որ մի փոքր հանգստանա: Այդ ժամանակ նաև Թագուհին ընկավ Թագավորի ոտքերը, խնդրեց ներում չնորհել նրան, քանի որ առաջ այդ մարդը սիրելի էր Թագավորին ու նրա կնոջը, և [Թագավորը] նրան [Սմբատին] իրեն որդեգիր էր համարել: Նա, զարմացած այդ մարդու հզորության ու տոկունության վրա և լսելով Թագուհուն ու ողջ պալատականների պաղատանքները, հրամայեց ներում չնորհել նրան:*

*Այնժամ նրան տարան բաղնիք՝ լողանալու, լողացրին նրան, հագցրին, հրավիրեցին նրան արքունական ընթրիքի և դարմանեցին նրան կերակուրներով: Փոքր-ինչ անցնելուց հետո Թագավորը հրամայեց նրան նավ նստեցնել և աքսորել հեռավոր կղզիներ, իսկ հետո հրամայեց անցկացնել Աֆրիկա և նրան տրիբուն կարգել այն զորքերի մեջ, որ գտնվում էին այնտեղ:*

## բ. ՔՆԱՐԵՐԳՈՒԹՅՈՒՆ. ԸՆՏԻՐ ՔԵՐԹՎԱԾՆԵՐ

*Բանաստեղծությունների ստորև բերվող թարգմանությունները, որ կատարել են Գ. Հակոբյանն ու Լ. Միրիջանյանը, լույս են տեսել «Հայ քնարերգություն: Անտիկ շրջանից մինչև VIII դարը» ժողովածուում (Երևան, 1981):*

### ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՎ

Այն գիշեր, երբ մատնվեց Փրկիչը մեր խաչվելու,
Ելավ լեռը Ձիթենյաց,
Աղոթելով, այս էր ասում.
– Հա՛յր, հեռացրո՛ւ այս բաժակը ինձանից...

Իսկ անօրեն աշակերտը, մոռանալով սերը նրա,
Շտապեց, գնաց քահանային հարցնելու,
– Ի՞նչ կտաք ինձ, թե ուսուցչին մատնեմ ես ձեզ...

Հավաքեցին հրեաները և կչռեցին բազում արծաթ.
Առան, տարան Պիղատոսին և ասացին.
– Խաչի՛ր նրան, խաչի՛ր նրան,
Նա օրենքներն է հայհոյում:

## ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

### Ա

Կենցաղիս ծովն հանապազ ալեկոծում է ինձ:
Մրրկոտ ալիքներ է Թշնամին իմ դեմ հարուցում:
Բարի նավապետ, եղիր իմ անձին ապավեն:
Երբ աչքերս վեր բարձրացնեմ դեպի քեզ,
Օգնիր ինձ, Տեր:
Նոր օրհնությամբ կօրհնենք քեզ,
Քրիստոս Փրկիչ մեր:
Մեր այցելու և Փրկիչ,
Ապրեցրու անձերը մեր:

### Բ

Մեղքերիս ծովն է ինձ ալեկոծում,
Դու, որ նավապետ ես բարի,
Շնորհիր ինձ նավահանգիստ, Հայր ամենակալ:

Կործում եմ ես պատրանքներիս անդունդներում,
Դու, բարի նավապետ,
Շնորհիր ինձ նավահանգիստ, Հայր ամենակալ:

Միակ իշխանն ես դու մեղքերի Թողության,
Եվ ես աղաչում եմ քեզ, Տեր,
Թողություն տուր մեղքերիս, Հայր ամենակալ:

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻ



### Ա

Խորհուրդն է մեծ և սքանչելի,
Որը այսօր հայտնվեց.
Հովիվները երգում են հրեշտակների հետ՝
Ավետիս են տալիս աշխարհին:

Ծնվեց նոր արքա
Բեթղեհեմ քաղաքում.
Սերունդներ մարդկային, օրհնեցե՛ք,
Քանզի մեզ համար մարմնացավ:

Նա, ում բավելի չեն երկինք ու երկիր,
Թողեց, որ իրեն խանձարուրով պատեն.
Զգատվելով իր Հորից՝
Սուրբ քարայրում բազմեց:

Բ

Ուրախացիր, սրբուհի,
Գաբրիելի ավետումով,
Նա քարոզեց գալուստը
Երկնքի Տեր արքայի:

Ողջո՛ւյն քեզ, Մարիամ,
Քեզ վրա սուրբ Հոգին կիջնի,
Եվ բարձրյալի զորությունը
Քեզ կլինի հովանի:

Նա, որ ծնվելու է քեզնից,
Առաջնորդն է Իսրայելի
Եվ տարածելու է ամենուր
Հզոր Աստծու խոսքն անմահ:



*Տիրամայրը մանկան հետ*
*(պատկերաքանդակ. VI դար)*

Գ

Ուրախ եղիր, բերկրյա՛լ,
Ամենասո՛ւրբ կույս,
Որ ծնեցիր աշխարհի
Արդարության արեգակը,
Որը լուսավորեց
Մարդկային ազգերը:

Ուրախ եղիր, բերկրյա՛լ,
Կնքվա՛ծ դուռ,
Որ ծնեցիր աշխարհին
Քրիստոս Թագավորին,
Որը նստում է անձեռակերտ
Իր աթոռի վրա:

## ՀՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ

### Ա

### ՍՈՒՐԲ ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐԻ ԿԱՆՈՆԸ

Ցնծացեք այսօր, ազգեր և ցեղեր ամենայն,
Հիշատակն է տոնվում սուրբ ուսուցիչների,
Որոնք պայծառացան երկնային լույսով:

Ցնծությամբ բերկրեցին ի փառս Աստուծո Որդու,
Պատերազմում զորավոր եղան,
Անօրեն իշխանին մեջտեղից վերացրին:

Մարմին առած անմարմնացյալները,
Հրեշտակակրոն առաքինությամբ,
Սուրբ եկեղեցին զարդարեցին փառքով
Եվ եղան քարոզողները Աստուծո Որդու:

### Դ

Տեր ուսուցիչը Մովսեսին էր նման,
Բերելով գիրն աստվածային՝ ի Հայաստան,
Որով լուսավորվեցին ազգերը Թորգոմի որդվոց:

Արժանացավ նա սինայական փառաբանման,
Եվ, առնելով պատգամները անմահական,
Տվեց իսրայելյան բանակին,
Որով լուսավորվեցին ազգերն Հակոբի որդվոց:

Արդ, աղաչում եմ քո հեզությանդ, տեր ուսուցիչ,
Բարեխոսիր երկնքում Հոր առջև՝ քեզ տոնողներիս
համար,
Քանզի քեզնով լուսավորվեցին ծառաները սուրբ
եկեղեցու:

## ԿՈՄԻՏԱՍ

### Ա

Անձինք՝ նվիրված սիրույն Քրիստոսի,
երկնավոր նահատակներ և կույսեր իմաստուն,
ի պարծանս ձեր, հպարտությամբ տոնում է ձեր տոնը
մայր Սիոնը իր դուստրերով:

Ձայները երկնային լցրեցին երկիրը,
քանզի անուշ հոտով բուրեցիք Քրիստոսի մոտ.
հավատի ողջակեզներ և փրկության զոհեր,
և գառներ անարատ՝ Աստծո ընծայված:

Գեղեցկությունը ձեր պայծառ մարմինների
հիմարացրեց թագավորին, և հեթանոսները համրացան.
կույսերի աստվածատուր սքանչելի գեղեցկությունից
հրեշտակները, տարփանքից, ձեր տոնը
մարդկանց հետ տոնեցին:

Դարձյալ հաղթեց արարչագործ զորությունը,
և դարձյալ աստվածատունկ Եդեմն է զարդարվում.
քանզի կենաց ծառը տնկվեց դրախտում,
նրա պտուղը մեզ բերեց երանելի Հռիփսիմեն:

Երկունքները մահաբեր անեծքների՝ վերացան,
ձոխանում է վերստին Ադամն աստվածակերպ.
դուք չեղաք Եվայի սովորական դուստրեր,
մարտիրոսներ եղաք և կույսեր՝ Աստուծո ընծայված:

Զորքը հրեշտակների՝ մարդկանց հետ տոնեց ձեր տոնը,
և կանայք գրվեցին երկնքի զինվորներ.
մահի հետ կուսությամբ պատերազմողները հաղթեցին,
խաչակից լինելով կուսածին արարչին:

Է զարմացումն ավելի, քան հրաշքը
հրեշտակների և մարդկանց խորհուրդների և խոսքերի.
քանզի Էնն Աստվածը ամենազոր զորությամբ,
խոնարհված, տեսնում էր հանդեսը կույսերի:

Ընկերներ միամիտ մարմնավոր կենցաղի,
նահատակներ հավասար և հոգով միացած.
միաբան ընթացան դեպի վայրը կովի,
զինվեցին հավատով և կացին հանդիման:

Թուլացան ուժերը հաստաձիգ աղեղների,
և տկար կանայք զինավառվեցին.
զորությամբ և փառքով պերճացած Թագավորը՝
մանուկ կույսից պարտված, ամաչում էր:

Ժողոված բազմությունը ազգերի և ցեղերի
չէր կարողանում մի նահատակի հաղթել.
քանզի նրան թիկունք դարձած աներևույթ օգնությունը
գաղտնի պատերազմը խորտակեց հայտնապես:

## ՍԱՀԱԿ ՁՈՐՈՓՈՐԵՑԻ

Իջավ Միածինը Հոր մոտից,
Եվ փառքի լույսը նրա հետ էր.
Ձայներ հնչեցրին սանդարամետներն անդունդների:

Տեսավ մեծ լույսը
Գրիգոր հայրապետը.
Ցնծությամբ պատմում էր հավատացյալ արքային.

– Եկեք չինենք
Սուրբ խորանը լույսի.
Քանզի սրա մեջ մեզ լույս ծագեց
Հայաստան աշխարհի համար:

## ԽՈՍՐՈՎԻԴՈՒԽՏ ԳՈՂԹՆԱՑԻ

Զարմանալի է ինձ թվում,
Քան երգերը երաժշտական,
Հնչմունքը քո ողբի ձայների,
Ով երանելի տեր Վահան,
Աստծո ընտրյալ:

Սա առավել հորդորում է հոգուս մասունքը՝
Հորինելու քեզ երգ ոչ ողբական,
Այլ հոգևոր և ուրախարար,
Հորդորակ և ներբողական,
Ով երանելի տեր Վահան,
Քրիստոսի ծառա:

Զարհուրելի է քո ճգնությունը
Մարմնիս բնությանը.
Իսկ դու առավել գտար.
Ով երանելի տեր Վահան,
Քրիստոսին սիրող:

Արտաքնապես զգեստները
Պատրանքային, սնոտի խոսքերի ստեղծիչներ են.
Իսկ քո սիրո խոսքերը՝ աստվածաբարբյալ և ոգեշահ.
Ով երանելի տեր Վահան,
Ազատների մեջ ընտրյալ:

Որպես քաջ նահատակ,
Պատերազմի պատրաստվելով,
Ավարտեցիր քո ճանապարհը
Արիաբար՝ հարավային ազգերի մեջ,
Դասվեցիր անմարմնականների դասը,
Ով երանելի տեր Վահան,
Գողթնի իշխան:

## ՍԱՀԱԿԱԴՈՒԽՏ ՍՅՈՒՆԵՑԻ

Սրբուհի Մարիամ, անապական տաճար
Եվ կենսատու էության ծնող և մայր.
Օրհնեալ ես դու կանանց մեջ,
Բերկրյալ Տիրամայր և կույս:

Անղաստան հոգևոր և համապայծառ ծաղիկ,
Որ քո մեջ հովանավորված հոգեհոս անձրևով
Պտղաբերեցիր Հորից՝ մարդկանց հայտնելով,
Օրհնյալ ես դու կանանց մեջ,
Բերկրյալ Տիրամայր և կույս:

Հաստատություն երկնքի և երկրի,
Կենդանությունների բաշխող,
Որ աստվածային լույսի ճառագայթներով վար իջած՝
Նախահորը վերականգնեց անկումից.
Օրհնյալ ես դու կանանց մեջ,
Բերկրյալ Տիրամայր և կույս:

